АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ГЛАВНАЯ РЕДАКЦИЯ АРМЯНСКОЙ СОВЕТСКОЙ ЭНЦИКЛОПЕДИИ

# АРМЯНСКАЯ СОВЕТСКАЯ ЭНЦИКЛОПЕДИЯ



7
ТОМ

ЕРЕВАН 1981

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՆՐԱԳԻՏԱՐԱՆԻ ԳԼԽԱՎՈՐ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՆՐԱԳԻՏԱՐԱՆ



## ՀԱՏՈՐ 7

## ՁՈՒԼՈՒՄ—ՄՈՆՈՊԽՈՆՔ

ԵՐԵՎԱՆ 1981

## ՀՍՀ ԳԻՏԱՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ



## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՆՐԱԳԻՏԱՐԱՆԻ ԳԻՏԱՃՅՈՒՂԱՅԻՆ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

# Ձ

**ՁՈՒԼՈՒՄ**, տես *Ձուլման արտադրություն*:

**ՁՈՒԼՈՒՄ ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ**, քանդակագործական աշխատանքը մետաղից կերտելու առավել տարածված եղանակ. նույն կերպ ստեղծված գեղարվեստական ստեղծագործություն, ինչպես և մետաղե ամանեղեն, սեղանի սպասք, լուսամփոփներ ևն պատրաստելու միջոց: Ձ. գ. սկզբնավորվել է մետաղի նախնական կիրառման և վերամշակման դարաշրջանում (տես *Բրոնզի դար*): Ձուլման արտադրության զարգացման համեմատ Ձ. գ. աստիճանաբար դարձել է առանձին բնագավառ, ուր գեղարվեստական խնդիրները ենթարկվում են կաղապարման և ձուլման առանձնահատկություններին, արտադրության որոշակի տեսակի համար մետաղի կամ համաձուլվածքի ընտրությանը: Այդ նպատակին է ծառայում նաև ձուլվածքի մակերեսի հաճախ հեղինակային վերամշակումը (դրվագում, փորագրում, բրոնզափառում, ոսկեզօծում), որի շնորհիվ մասսայական արտադրությունը ձեռք է բերում եզակիության հատկանիշներ:

Ձ. գ-ի հիմնական տեխնոլոգիան մշակվել է բրոնզը (տես *Բրոնզը* ա ր վ ե ս տ ու մ) որպես նախանյութ ընտրելու հետ միաժամանակ, որը վաղուց ի վեր ամենից շատ կիրառվող համաձուլվածքն է: Սկսած IV դարից ոչ մեծ առարկաներ ձուլելու ժամանակ որպես նախանյութ օգտագործվել է անագը (IV—VII դդ. դպտական դամբարանների հմայիլներ), որից XVI—XVIII դդ. ձուլել են մեդալներ և գլխավորապես անոթներ: XVII—XVIII դդ. պարտեզային քանդակներ են ձուլել արճճից (Վերսալ, Պետրոդվորեց): XV դ. Գերմանիայում, ապա Եվրոպայի մյուս երկրներում (Ռուսաստանում՝ XVII դ. վերջ) Ձ. գ-ում օգտագործում են թուջը (պարտեզային քանդակ, կահույք, մահարձան, ցանկապատ ևն): Ինչպես բրոնզը, այնպես էլ թուջը, որը բավական էժան է, լայն կիրառում ունի ժամանակակից Ձ. գ-ում: Հայերը Ձ. գ-ին ծանոթ են հնուց: Էջմիածնում, Լճաշենում, Արթիկում, Ստեփանավանում գտնվել են ցուլերի, այծերի, թռչունների բրոնզաձույլ արձանիկներ, ռազմակառքերի մոդելներ, գոտիներ ևն: Միջին դդ. պատրաստել են գեղարվեստորեն ձևավորված բուրվառներ, կանթեղներ, հավանգներ, սինիներ ևն: Սովետական իշխանության տարիներին մոնումենտալ և կիրառական արվեստում լայն տարածում են գտել ինչպես բրոնզը, այնպես էլ թուջն ու տարբեր համաձուլվածքները:

*Գրկ.* Зотов Б. Н., Формовка художественного литья, М., 1947.



Մարտակառքի մանրակերտ, բրոնզ (մ. թ. ա. XIV—XIII դդ., գտնվել է 1956-ին, Լճաշենում, այժմ՝ Հայաստանի պատմության պետական թանգարանում, Երևան)

Ն. Նիկողոսյան. Լ. Քալանթարի արձանը, բրոնզ (1947, Ե. Չարենցի անվ. գրականության և արվեստի թանգարան, Երևան)



**ՁՈՒՅԼ**, հնամենի գյուղատեղի Վանա լճի հարավ-արևմտյան ափին: Ըստ ավանդության Ձ. մեծ բնակավայր է եղել դեռևս Հայկ Նահապետի ժամանակներում: Այստեղ գտնվել է ոսկու միակտոր մի ձույլ, որ կշռում էր չորս ձիաբեռ: Այդ պատճառով էլ գյուղը կոչվել է Ձ.: Ոսկու այդ կտորը նման է եղել Ձ-ից ոչ շատ հեռու գտնվող Նեմրութ լեռանը: Սկզբում շինականները որոշում են մանրատել ոսկին և բաժանել միմյանց միջև, սակայն գեղջավագը կանխում է նրանց և ասում. «Երազում ես տեսա Հայկ Նահապետին: Նա ասաց, որ այս ոսկին պատկանում է համայն Հայքին: Ոչ ոք իրավունք չունի մանրատել այն: Աստվածները կպատժեն այն մարդուն, ով փորձի թեկուզ մի եղունգի չափ ոսկի պոկել նրանից: Այս ձույլին մենք կարող ենք ձեռք տալ միայն այն ժամանակ, երբ պետք լինի զենք կռել և հայրենի հողը պաշտպանել օտար ասպատակողներից: Դա պարտավոր են իմանալ բոլոր հայերը և փոխանցել միմյանց որդոց-որդի»:

Ավանդությունն այդ ձույլ ոսկու մասին ուրիշ բան չի հաղորդում: Սակայն Ձ. հայտնի է եղել ոչ միայն իր նշանավոր ոսկու կտորով: Այս գյուղում պատրաստել են հայկական ընտիր նետ ու աղեղ: Մ. թ. ա. առաջին դարում Ձ. գյուղը ասպատակել է հռոմեական զորավար Լուկուլլոսը: Նա փորձել է տիրանալ Ձ-ի ոսկե ձույլին: Սակայն Ձ-ի բնակիչները չեն հայտնել ոսկու տեղը: Լուկուլլոսը ավերել է Ձ. գյուղը և սրի քաշել նրա բնակիչներին: Այն ժամանակվանից էլ Ձ. գյուղի և նրա միակտոր ոսկու մասին ոչ մի տեղեկություն չկա:

**ՁՈՒՍՊԱԹԱՂԱՆԹ**, հոդերի, ջլաբունոցների և ձուսպապարկերի շարակցական պատյանի ներքին շերտը: Արտադրում է ձուսպային հեղուկ, հարուստ է արյան և ավշային անոթներով, նյարդային վերջույթներով: Ձ-ի շնորհիվ ձուսպային խոռոչի և անոթային հունի միջև կատարվում է նյութափոխանակություն:

# Ղ

**Ղ**, հայերեն այբուբենի տասնութերորդ տառը: Անունն է ղատ: Ստեղծել է Մեսրոպ Մաշտոցը տառակերտման սեփական սկզբունքով: Կազմված է երեք ուղղաձիգ տարրերից, ընդ որում կարճ տարրը տեղավորված է երկարի ձախ կողմում, հավասար բարձրությամբ, և իրար են միանում վերին ծայրերից, իսկ լայնը գտնըվում է երկարի աջ կողմում, ստորին ծայրից ցած, և երկարի ստորին ծայրին է միանում իր վերին ծայրով՝ **Ղ**: Ունի բոլոր հինգ տառատեսակները, որոնցում պահպանում է գծագրական իր յուրահատկությունը, համարյա առանց էական ձևափոխությունների:

*Գրչագիրը* գրվում է երկու տողագծերի միջև ուղղաձիգ՝ **Ղ**, և թեթև աջ թեքված:

*Երկաթագիրը* նույն գրչագիրն է, կարճի ու երկարի կոր նուրբով միացած՝ Ղ, օգտագործվել է նաև որպես գլխագիր: *Բոլորգրում*, *շղագրում* և *նոտրգրում* հաճախ կորցնում է լայնը՝ Ղ, Ղ, Ղ:

Ղ տառը նշանագրում է հայերենի ետնալեզվային շփական ձայնեղ բաղաձայն հնչյունը (հնչույթը): Ժամանակակից արևելահայ և արևմտահայ գրական տարբերակներում երբեմն խլանալով հնչում է *խ* (հաղթել-հախթել): Ղ նշանակել է իննըսուն և իննսուներորդ, բյուրի նշանով՝ (Ղ̅) իննսուն բյուր (900000): Արաբ. թվանշանների գործածությունից հետո օգտագործվել է որպես քանակական և դասական թվական: Այժմ գործածվում է միայն դասական թվականի արժեքով (Ղ-իննըսուներորդ):

*Ա. Մաթևոսյան*

**ՂԱԲԱԽԼՈՒ**, գյուղ Հայկական ՍՍՀ Եղեգնաձորի շրջանում, շրջկենտրոնից 16 *կմ* հյուսիս-արևելք: Միավորված է Ղավուշուղի անասնապահական սովետական տնտեսության հետ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, կինո, մանկապարտեզ, բուժկայան:

**ՂԱԲԱՂԹԱՓԱ**, գյուղ Հայկական ՍՍՀ Թալինի շրջանում, շրջկենտրոնից 6 *կմ* հարավ-արևելք: Միավորված է Դաշտադեմի սովետական տնտեսության հետ, վարչատերիտորիալ կարգով ենթարկվում է Թալինի ավանային սովետին: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, բուժկայան:

**ՂԱԴԱ**, գյուղ Աբխազական ԻՍՍՀ Գուլրիփշի շրջանում, շրջկենտրոնից 35 *կմ* հյուսիս-արևելք: Բնակչությունը՝ հայեր, վրացիներ: Կոլտնտեսությունն զբաղվում է ծխախոտի, եգիպտացորենի մշակությամբ, այգեգործությամբ, մեղվաբուծությամբ և անասնապահությամբ: Ունի տարրական դպրոց: Հայերը եկել են Տրապիզոնից, 1897-ին:

**ՂԱԴՈՒԼԱՐ**, հայաբնակ գյուղ Վրացական ՍՍՀ Ախալքալաքի շրջանում, շրջկենտրոնից 21 *կմ* հյուսիս: Գյուղից հս. ձգվում են Թրիալեթի լեռները, իսկ հս-արլ. կողմում գտնվում է Տաբացկուրի լիճը: 1979-ի մարդահամարի տվյալներով Ղ. ունի 710 (152 ընտանիք) բն.: Զբաղվում են անասնապահությամբ և հողագործությամբ (կարտոֆիլ, հացահատիկային և կերային կուլտուրաներ): Գործում է պեմզաբլոկի արտադրամաս, ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, բուժկետ, կինոկետ, էլեկտրաղաց, սղոցարան, բաղնիք: Ղ-ի եկեղեցին (Ս. Նարեկ) կառուցվել է 1868-ին: Գյուղի հայերը եկել են 1830-ին, Արևմտյան Հայաստանի Էրզրումի նահանգի Օրթիզ գյուղից:

**ՂԱԶԱԶՅԱՆ** Անուշավան Վահանի [ծն. 18. 3.1922, գ. Շահումյան (Վրաց. ՍՍՀ-ում)], հայ սովետական բժիշկ, ինֆեկցիոնիստ: Բժշկ. գիտ. դ-ր (1970), պրոֆեսոր (1972): ՍՄԿԿ անդամ 1943-ից: Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: Ավարտել է Երևանի բժշկ. ինստ-ը (1951), աշխատել տեղում, 1955-ից՝ վարակիչ հիվանդությունների ամբիոնում (1973-ից՝ վարիչ): Գիտական աշխատանքները հիմնականում վերաբերում են լյարդի և աղիքային վարակիչ հիվանդությունների խառը ձևերի կլինիկակենսաքիմիական ուսումնասիրությանը: Ղ. եղել է ՍՍՀՄ ինֆեկցիոնիստների գիտական ընկերության նախագահության անդամ (1968—78), ՀՍՍՀ նույնանուն ընկերության հիմնադիրն ու նախագահը (1973—78):

**ՂԱԶԱԽ**, քաղաք, Ադրբեջանական ՍՍՀ Ղազախի շրջանի կենտրոնը: Գտնվում է Աղստաֆա գետի ափին, Աղստաֆա երկաթուղային կայարանից 9 *կմ* հվ-արմ.: Ավտոճանապարհների հանգույց է: Մոտ 15 հզ. բն. (1976): Ունի գորգագործական ֆաբրիկա, պահածոների կոմբինատ, գյուղատնտ. տեխնիկում, ժող. թատրոն, այստեղ է ադրբ. բանաստեղծ Մ. Վագիֆի անվ. թանգարանը:

**ՂԱԶԱԽԱԿԱՆ ԱՐԽԱՐԱՄԵՐԻՆՈՍ** մսաբրդատու նրբագեղմ ոչխարների ցեղ:

Գրչագիր V-X դդ.

Գլխագիր V-XX դդ.

Երկաթագիր V-IX դդ.

Գրչագիր մինչև XII դ.

Բոլորգիր V-XX դդ.

Երկաթագիր VI-X դդ.

Գրչագիր VIII-XIII դդ.

Երկաթագիր VII-XV դդ.

Գրչագիր VIII-XIII դդ.

Բոլորգիր V-XX դդ.

Բոլորգիր XIII-XVII դդ.

Գրչագիր VIII-XVI դ.

Նոտրգիր XVI դ.

Շղագիր XII-XX դդ.

Գրչագիր XX դ.

Նոտրգիր XV-XIX դդ.

Շղագիր XX դ.

Ստացվել է Ղազախ. ՍՍՀ-ում միջտեսակային հիբրիդացման եղանակով (նորկովկասյան մերինոսների մաքիները սերմնավորել են որսի ժամանակ սպանված լեռնային արխարի ամորձիներից վերցված սերմնահեղուկով): Հետագայում առաջին սերնդի խառնացեղ խոյերը տրամախաչել են պրեկոս և ռամբույե ցեղերի մաքիների հետ, իսկ երրորդ սերնդի խառնացեղերը բուծել են «ինքն իր մեջ»: Ցեղը հաստատվել է 1950-ին: Աշխատանքները ղեկավարել է Ն. Ս. Բուտարինը: Ոչխարները խոշոր են, ունեն ամուր կոնստիտուցիա և ոսկրակազմ, համաչափ մարմնակազմ: Լավ հարմարված են լեռնային արոտների պայմաններին: Խոյերի կենդանի զանգվածը՝ 90—115, մաքիներինը 55—65 *կգ* է: Բրդատվությունը՝ համապատասխանաբար 7—8 և 3,2—3,5 *կգ*: Բրդի մաքուր ելքը՝ 50—55%, երկարությունը՝ 7—10 *սմ*, հաստությունը՝ հիմնականում 64 որակի: 100 մաքու պտղատվությունը 110—120 գառ է: Վաղահաս է. 4 ամսական գառների կենդանի զանգվածը հասնում է մինչև 30—32, 1,5 տարեկաններինը՝ 50 *կգ*: Ցեղն օգտագործվում է կոպտաբուրդ ոչխարները բարելավելու համար: Տարածված է Ալմա Աթայի, Պավլոդարի, Արևելյան Ղազախստանի մարզերում:

*Մ. Քարամյան*

**ՂԱԶԱԽԱԿԱՆ ՄԱՆՐԱԲԼՈՒՐՆԵՐ**, կ ե ն տ ր ո ն ա ղ ա զ ա խ ա կ ա ն  մ ա ն ր ա բ լ ու ր ն ե ր, Տուրգայան սարավանդից մինչև Ալթայ ձգվող ընդարձակ հարթավայրա-բարձրավայրային տարածություն Ղազախական ՍՍՀ-ում: Երկարությունը մոտ 1200 *կմ* է, լայնությունը՝ մինչև 900 *կմ*, ռելիեֆը բլուրների, բլրաթմբերի և գոգավորությունների ամբողջություն է (հարաբերական բարձրությունը՝ 30—100 *մ*): Առանձին լեռնային զանգվածներով՝ Ուլուտաու (1133 *մ*), Կոկչետավի (Սինյուխա լեռ, 947 *մ*), Կարկարալինյան (Ակսորան լեռ, 1565 *մ*) և Չինգիզտաուի (1077 *մ*): Կլիման խիստ ցամաքային է, չոր, հունվարի միջին ջերմաստիճանը՝ —14°C-ից մինչև —18°C, ամենացածրը՝ մինչև —40°C, հուլիսինը՝ 20—24°C, երբեմն՝ 35°C: Տարեկան տեղումները 200 *մմ* են, լեռնային մասերում՝ 370 *մմ*:

Գետերը՝ Իշիմ, Նուրա, Սարիսու են, ունեն անկայուն ռեժիմ: Շատ են մանր լճերը, ամենամեծը Թենգիզ աղի ծանծաղ լիճն է: Ղ. մ. հարուստ են ածխի (Կարագանդա, Էկիբաստուզ), երկաթի (Ատասու), պղնձի (Ջեզկազգան, Կոունրադ) են հանքերով: Ղ. մ-ի հս-ում չյուղախոտափետրախոտային տափաստաններ են (մասամբ՝ մշակված), կենտրոնական մասում՝ չոր տափաստաններ, հվ-ում՝ քարքարոտ կիսաանապատներ, անապատային բուսականության առանձին տեղամասերով: Խոպանն օգտագործվում է որպես արոտավայր:

**ՂԱԶԱԽԱԿԱՆ ՆՐԲԱԳԵՂՄ**, մսաբրդատու ոչխարների ցեղ: Ստացվել է 1931—46-ին, Ղազախական անասնաբուծական ԳՀԻ-ի փորձարարական կայանում, տեղական դմակավոր մաքիների և պրեկոս ցեղի խոյերի տրամախաչումից: Առաջին և երկրորդ սերնդի նուրբ ու կիսանուրբ բրդով ոչխարները բուծել են «ինքն իր մեջ» եղանակով: Ոչխարները խոշոր են, ունեն ամուր կոնստիտուցիա: Մաքիներն անեղջյուր են, խոյերը՝ եղջյուրներով կամ անեղջյուր: Խոյերի կենդանի զանգվածը՝ 90—100, մաքիներինը 60—65 *կգ* է: Բրդատվությունը՝ համապատասխանաբար 7—9 և 4,0—4,5 *կգ*: Մաքուր բրդի ելքը 50—52% է, երկարությունը՝ 7—8 *սմ*, հաստությունը՝ 60 և 64 որակի: 100 մաքու պտղատվությունը 130—140 գառ է: Միսը լավ որակի է: Սպանդային ելքը՝ 53—57%: Տարածված է Ղազախ. ՍՍՀ հվ-արլ. շրջաններում:

*Մ. Քարամյան*




**ՂԱԶԱԽԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ** (Կազակ Սովետտիկ Սոցիալիստիկ Ռեսպուբլիկասը), Ղ ա զ ա խ ս տ ա ն

Բ ո վ ա ն դ ա կ ու թ յ ու ն



**I. Ընդհանուր տեղեկություններ**

Ղազախական ՍՍՀ կազմվել է 1920-ի օգոստ. 26-ին՝ որպես Կիրգիզական ԻՍՍՀ ՌՍՖՍՀ կազմում, 1936-ի դեկտ. 5-ին վերակազմվել է միութենական հանրապետության՝ Ղազախական ՍՍՀ: Գտնվում է ՍՍՀՄ ասիական մասի հվ-արմ-ում: Սահմանակից է ՌՍՖՍՀ-ին, Թուրքմենական ՍՍՀ-ին, Ուզբեկական ՍՍՀ-ին, Կիրգիզական ՍՍՀ-ին, Չինաստանին: Արմ-ում ողողվում է Կասպից ծովով: Տարածությունը 2717,3 հզ. *կմ*² է, բնակչությունը՝ 14858 հզ. (1980), մայրաքաղաքը՝ Ալմա Աթա: Վարչականորեն բաժանվում է 19 մարզի և 218 շրջանի: Ունի 82 քաղաք, 193 քտա: Ղ-ում է Բայկոնուր տիեզերանավակայանը:

Քարտեզները տես 16—17-րդ էջերի միջև՝ ներդիրում:

**II. Պետական կարգը**

Ղ. համաժողովրդական պետություն է, ՍՍՀՄ կազմի մեջ մտնող սովետական սոցիալիստական հանրապետություն: Գործող սահմանադրությունն ընդունվել է 1978-ին: Պետ. իշխանության բարձրագույն մարմինը միապալատ Գերագույն սովետն է, նստաշրջանների միջև ընկած ժամանակահատվածում՝ Գերագույն սովետի Նախագահությունը: Գերագույն սովետը կազմում է կառավարություն՝ հանրապետության Մինիստրների խորհուրդ, ընտրում Գերագույն դատարան, ընդունում օրենքներ են: Իշխանության տեղական մարմինները ժող. դեպուտատների մարզային, շրջանային, քաղաքային, ավանային սովետներն են: Ղազախական ՍՍՀ դատախազին նշանակում է ՍՍՀՄ գլխավոր դատախազը՝ 5 տարի ժամկետով:

**III. Բնությունը**

Ղ-ի տարածքի մեծ մասը գրավում են հարթավայրերն ու դաշտավայրերը: Արմ-ում տարածվում են Մերձկասպյան դաշտավայրը (որի հվ-ում է գտնվում Կարագիեն՝ ՍՍՀՄ-ում ամենացածր իջվածքը, —132 *մ*) և Ուրալյան լեռների հվ. ճյուղերը, հվ-ում՝ Թուրանի դաշտավայրը: Կենտրոնական մասը զբաղեցնում են Ղազախական մանրաբլուրները (Սարիարկա) և Բետպակ Դալա անապատը: Հս-ում Արևմտասիբիրական հարթավայրի հվ. եզրերն են, հվ-արլ-ում՝ Ալթայը, Տարբագաթայը, Ջունգարական Ալա Թաուն, Տյան Շանի հս. և արմ. շղթաները:

**Երկրաբանական կառուցվածքը և օգտակար հանածոները**: Արմ-ում Ղ-ի տարածքն ընդգրկում է Արևելաեվրոպական պլատֆորմի Մերձկասպյան սինեկլիզի մեծ մասը, որտեղ ֆաներոզոյան հաստվածքների հզորությունը հասնում է 16—18 *կմ*: Սինեկլիզի կտրվածքի միջին հատվածը ներկայացված է պալեոզոյան հասակի աղաբեր նստվածքներով: Աղը կազմում է ավելի քան 350 աղային գմբեթների միջուկները: Աղագմբեթային կառուցվածքների հետ են կապված նավթի շահագործվող հանքավայրերը, որոնք հարում են պերմտրիասի, յուրայի, կավճի և պալեոգենի ապարներին: Մուհոջարները կազմված են մինչքեմբրիի ու պալեոզոյի բարդ ծալքավորված և գրանիտոիդային ինտրուզիաներով կտրտված հաստվածքներից: Մուհոջարներից դեպի արլ. և հվ. պալեոզոյան հիմքը առկա է Ղ-ի ամբողջ տարածքում: Այդ հիմքի հետ են կապված մետաղային և ոչմետաղային օգտակար հանածոների մի շարք խոշոր հանքավայրեր: Ղ. հարուստ է օգտակար հանածո-

Բայանաուլյան լեռներ



ներով: Կա նավթ, գազ, քարածուխ և գորշ ածուխ, երկաթի հանքաքար, մանգան, նիկել, քրոմ, վոլֆրամ, պղինձ, կապար, ցինկ, բազմամետաղներ, հազվագյուտ և ազնիվ մետաղներ, ֆոսֆորիտ, կալիումական աղեր, քարաղ, ալյումինի հումք, ասբեստ:

Կ լ ի մ ա ն խիստ ցամաքային է: Հունվարի միջին ջերմաստիճանը հս-ում — 19°C է, հվ-ում՝ —4°C, հուլիսինը՝ հս-ում 19°C, հվ-ում՝ 26°C: Տարեկան տեղումները հս-ում 300—400 *մմ* են, հվ-ում՝ 100—200 *մմ*, նախալեռներում և լեռներում՝ 400—1600 *մմ*: Վեգետացիոն ժամանակաշրջանը հս-ում 190—200 օր է, հվ-ում՝ 230—290 օր: Սառցադաշտերի ընդհանուր թիվն անցնում է 2700-ից, որոնց տարածությունը մոտ 2000 *կմ*² է:

**Ներքին ջրերը**: Գետերը տեղաբաշխված են անհավասարաչափ: 85 հզ. գետերից միայն 228-ն ունեն 100 *կմ* և ավելի երկարություն: Գլխավոր գետերն են Իրտիշը, Սիրդարյան, Ուրալը, Էմբան, Իշիմը, Իլին, Կարատալը, Չուն, Նուրան: Գետերի վրա կառուցված են 4000 ջրամբարներ և արհեստական լճակներ: Կենտրոնական Ղ-ի ջրամատակարարման համար կառուցվել է Իրտիշ—Կարագանդա ջրանցքը: Կան ավելի քան 48 հզ. լճեր (գլխավորապես աղի): Խոշոր լճերն են Բալխաշը, Զայսանը, Ալակոլը, Թենգիզը, Սելետըտենիզը, Սասըկկոլը, Կուշմուրուն, Մարկակոլը, Ուլկեն Կարոյը: Ղ-ի սահմանի մեջ են մտնում Կասպից ծովի հս. և հս-արլ., Արալյան ծովի հս. մասերը: Կան քաղցրահամ և թույլ աղի ստորգետնյա ջրերի մեծ պաշարներ (7000 *կմ*³): Շատ են հանքային աղբյուրները:

**Հողերը, բուսական և կենդանական աշխարհը**: Հողային ծածկույթին բնորոշ է լավ արտահայտված զոնայականությունը: Հս-ում նեղ շերտով տարածված են սևահողերը, դեպի հվ.՝ շագանակագույն, ավելի հվ.՝ գորշ և մոխրագորշ անապատային հողերը, որոնք հերթագայվում են անապատային, ավազային և թաքիրանման հողերի զանգվածներով: Լեռներում տիրապետում է ուղղաձիգ գոտիականությունը:

Ղ-ի հս-ում, տափաստանային զոնայում բուսականությունը տարախոտային է: Հանդիպում են նաև կեչուտներ, սոճուտներ, կաղամախու պուրակներ: Չոր տափաստաններին բնորոշ են շյուղախոտատափետրախոտային և թփուտային բույսերը, կիսաանապատներին՝ օշինդրաբոնդավորները: Մեծ տարածություն են զբաղում անապատները: Նախալեռնային հարթավայրերում աճում են էֆեմերներ, լեռնաշղթաների նախալեռները ծածկված են տափաստանային բուսականությամբ, ավելի բարձր՝ անտառներով, ենթալպյան և ալպյան մարգագետիններով: Անտառների հիմնական զանգվածները կենտրոնացած են Ալթայում, Ջունգարական Ալա Թաուում և Տյան Շանի արլ. մասում:

Կենդանական աշխարհին բնորոշ են գետնասկյուռը, ավազամուկը, սայգան, ջեյրանը, մարալը, գայլը, աղվեսը, գորշ արջը, հովազը, լուսանը, կուղբը, սիբիրյան կզաքիսը ևն: Կլիմայավարժեցված է մշկամուկը: Շատ են սողուններն ու միջատները, ջրային և տափաստանային թռչունները: Լճերն ու գետերը հարուստ են ձկներով: Ղ-ի տարածքում են Ալմա Աթայի, Ակսու Ջաբագլինի, Բարսակելմեսի, Նաուրզումի, Կուրգալջինի, Մարկակոլի արգելավայրերը:

**IV. Բնակչությունը**

Հիմնական բնակիչները *ղազախներն* են (36%): Բնակվում են մեծ թվով ռուսներ (40,8%), ինչպես նաև ուկրաինացիներ, թաթարներ, ուզբեկներ, բելոռուսներ, հայեր և այլք: Միջին խտությունը 1 *կմ*² վրա 5,5 մարդ է (1980): Առավել խիտ է բնակեցված Ղ-ի հվ. նախալեռնային գոտին: Քաղաքային բնակչությունը 54,3 % է (1980): Խոշոր քաղաքներն են Ալմա Աթան, Կարագանդան, Չիմքենդը, Սեմիպալատինսկը, Ուստ Կամենոգորսկը, Ջամբուլը:

**V. Պատմական ակնարկ**

Ղազախստանի ներկայիս տարածքում մարդը բնակվել է դեռևս քարի դարում (շուրջ 300 հզ. տարի առաջ): Նոր քարի դարում սկսվել է գործածվել աղեղը, պատրաստվել են խեցեղեն իրեր: Բրոնզի դարում զբաղվել են խաշնարածությամբ, բրիչային երկրագործությամբ, որսով ու ձկնորսությամբ: Անասնապահության և հողագործության զարգացման հետևանքով մայրական տոհմը փոխարինվել է հայրականով, երևան են եկել նահապետական ընտանեկան սեփականության սաղմերը: Մ. թ. ա. I հազարամյակի կեսին անասնապահ ցեղերը սկսել են առանձնանալ և անցնել քոչվոր անասնապահությանը: Հերոդոտոսը և այլ անտիկ հեղինակներ Ղ-ի այդ դարաշրջանի ցեղերին անվանել են ասիական ս կ յ ու թ ն ե ր, աքեմենյան սեպագրերում նրանք հիշվում են ս ա կ ե ր հավաքական անվամբ: Սակերի մշակույթը ժառանգել են մ. թ. ա. III—II դդ. կազմավորված և Սեմիրեչիեի (Չու գետից մինչև Տյան Շան և Բալխաշից մինչև Իսսիկ Կուլ) շրջանում տարածված ու ս ու ն ի ցեղային միությունը, Կարատաուի ու Սիրդարյայի միջին հոսանքում սփռված և Կանգյույ պետ. կազմավորման մեջ մտած ցեղերը և Արալյան ծովի արմ. ափերից Կասպից ծովի հս. ափերը քոչած ա լ ա ն ա կ ա ն ցեղերը: Ղ-ի ժողովուրդները շրջանցել են ստրկատիրությունը: Նախնադարյան համայնական կարգերն աստիճանաբար փոխարինվել են ֆեոդալական հարաբերություններով: VI դ. կեսին Ղ-ի տարածքում առաջացել է առաջին վաղ ֆեոդալական պետությունը՝ *Թյուրքական խաքանությունը*: VIII դ. սկզբին ստեղծվել է թյուրգեշների, 766-ին՝ կարլուկների պետությունը, որտեղ ֆեոդալական հարաբերությունները զարգացել են համեմատաբար արագ, առաջացել են քաղաքներ (Թարազ՝ այժմ Ջամբուլ ևն), հատվել է դրամ: VIII—X դդ. Ղ-ի հվ-ում տարածվել է *մահմեդականությունը*: IX—XI դդ. արմ. և հվ-արմ. շրջանները մտել են օղուզների վաղ ֆեոդալական պետության մեջ, որի տարածքով անցնում էր միջազգային քարավանային առևտրական ճանապարհ: VIII—XI դդ. Ղ-ի հս-արլ. և կենտրոնական շրջաններում բնակություն են հաստատել կիմակների և ղփչաղների թյուրք. ցեղերը: X դ. 1-ին կեսին կարլուկների պետության տեղում կազմավորվել է Կարախանյանների ֆեոդալական պետությունը, որը X դ. վերջին — XI դ. 1-ին կեսին ներառում էր Կաշգարը, Մավերաննահրը, Սեմիրեչիեն: Նվաճված տիրույթները կառավարելու համար խանը նշանակում էր իլխաններ, որոնց, որպես իր վասալների, իրավունք էր շնորհում հարկ հավաքելու որոշակի շրջաններում: XII դ. 30-ական թթ. Կարախանյանների պետություն ներխուժեցին մոնղ. կիդանի ցեղերը, որոնք ստեղծեցին Կարակիդանիների պետությունը: 1219—1221-ին Ղ. նվաճեցին մոնղոլ-թաթարները: XIV դ. վերջին — XV դ. սկզբին Ղ-ի տարածքը մտավ հիմնականում Նողայական հորդայի և Ուզբեկական խանության մեջ:

Ուզբեկական խանության բնակչությունը կրում էր «ուզբեկ-ղազախներ» հավաքական անունը: Ֆեոդալական շահագործման ուժեղացման և երկպառակությունների հետևանքով XV դ. կեսից ղազախական տոհմերը խանությունից քոչեցին Արևմտյան Սեմիրեչիե: Մոնղոլ-թաթարական լծի վերացումից հետո վերականգնված Սեմիրեչիեն դարձավ ղազախական ցեղերի միավորման կենտրոն: XV դ. վերջին — XVI դ. սկզբին այստեղ առաջացավ Ղազախական խանությունը, և այդ ժամանակ էլ ավարտվեց ղազախական ազգության կազմավորման երկարատև ընթացքը: Ղազախական խանության երեք՝ Մեծ (կամ Ավագ, Սեմիրեչիե), Միջին (Կենտրոնական Ղ.) և Փոքր (կամ Կրտսեր, Արևմտյան Ղ.) շրջաններում (ժուզերում) XVII դ. կազմավորվեցին ինքնուրույն խանություններ: Ղազախների տնտեսության առաջատար ճյուղը արոտավայրային-քոչվոր անասնապահությունն էր: Երկրագործությունը պարզունակ էր, արհեստները զարգանում էին դանդաղ, առևտուրը կրում էր փոխանակային բնույթ: Ֆեոդալական հարաբերությունները միահյուսված էին նահապետական-տոհմատիրական տարրերի հետ: Հիմնական դասակարգերն էին ֆեոդալները (խաներ, սուլթաններ, բայեր, խոջաներ ևն) և կախյալ գյուղացիները՝ շարուաները. հատուկ խավ էին կազմում նահապետական ստրուկները՝ դուլերը: Ադաթի բազմազան նորմերի կողքին գործում էին նաև շարիաթի (ֆեոդալա-մահմեդական իրավունք) որոշ նորմեր: XVIII դ. սկզբին կազմվեց ֆեոդալական իրավակարգի հիմնական սկզբունքները սահմանող օրենսգիրք:

XVIII դ. սկզբին խանական մասնատվածության ու չդադարող ֆեոդալական երկպառակությունների, ինչպես նաև արտաքին վտանգի պայմաններում Փոքր ժուզի խան Աբուլհայրը 1726-ին դիմեց Ռուսաստանին՝ նրա հպատակության տակ անցնելու խնդրանքով, որը բավարարվեց 1731-ին: Ռուս. հպատակությունը ընդունեցին նաև 1740-ին՝ Միջին և 1846-ին՝ Մեծ ժուզերը: Մեծ բեկում կատարվեց ղազախ ժողովրդի պատմական ճակատագրում: Արդեն XVIII դ. 2-րդ կեսից Ղ-ում հասարակական հարաբերությունները սկսեցին զարգանալ Ռուսաստանի տնտեսության ուժեղացող ազդեցության ներքո: Ամրապնդվում էին Ղ-ի և Ռուսաստանի առևտրական կապերը, իսկ սահմանային

շրջաններում ռուս. բնակչության ավելացումը նպաստում էր երկրագործության և արհեստների զարգացմանը: Միևնույն ժամանակ ցարիզմը Ղ-ում անց էր կացնում գաղութատիրական միջոցառումներ: Ղ-ի՝ Ռուսաստանին միանալու կարևոր արդյունքներից էր ռուս և ղազախ աշխատավորների մերձեցումը, որը հատկապես ի հայտ եկավ Ե. Պուգաչովի գլխավորած գյուղացիական պատերազմի (1773—75) ժամանակ, երբ շատ ղազախներ մասնակցեցին ապստամբությանը: 1783—97-ին տեղի ունեցավ Փոքր ժուզի ղազախների ապստամբությունը ընդդեմ ցարական կառավարության:

XIX դ. 1-ին կեսին Ղ-ում տեղի ունեցած տնտ. փոփոխություններին (առևտրական կապերի աշխուժացում Ռուսաստանի հետ, երկրագործության զարգացում ևն) զուգընթաց փոխվեց նաև ղազախների քաղ. կարգը: Ցարական կառավարությունը Միջին (1819) և Փոքր (1824) ժուզերում վերացրեց խանական իշխանությունը, հաստատեց վարչակառավարման նոր կարգ, որի հիմքը «Սիբիրյան կիրգիզների կանոնադրությունն» (1822) էր, և որը ուներ ցարիզմի շահերից բխող գաղութատիրական բնույթ: Չնայած դրան, Ղ-ի հասարակական կյանքում տեղի էին ունենում առաջադիմական տեղաշարժեր, զարգանում էին արտադրողական ուժերը, փոխվում էր դասակարգային կառուցվածքը:

XIX դ. 60-ական թթ. ավարտվեց ղազախական հողերի միացումը Ռուսաստանին: 1867—68-ին ցարական կառավարությունը անցկացրեց վարչական ռեֆորմ: Թուրքեստանի գեներալ-նահանգապետության կազմում ստեղծվեցին Սեմիրեչիեի և Սիրդարյայի, Օրենբուրգի գեներալ-նահանգապետության կազմում՝ Ուրալյան և Տուրգայի, Արևմտասիբիրյան գեներալ-նահանգապետության կազմում՝ Ակմոլինսկի և Սեմիպալատինսկի մարզերը: Մարզերը բաժանվում էին գավառների, գավառները՝ վոլոստների, վոլոստները՝ վարչական աուլների: Ամբողջ հողը հայտարարվեց պետ. սեփականություն, փոփոխություններ մտցվեցին դատավարական գործում: Բարեփոխումների իրագործումը նպաստում էր համառուս. տընտեսության մեջ Ղ-ի հետագա ներգրավմանը: Արտադրողական ուժերի զարգացմանը խթանեց ռուս և ուկրաինացի գյուղացիների վերաբնակեցումը Ղ-ում, ուր ստեղծվեցին կապիտալիստական ուղիով զարգացող ավելի քան 500 ռուս. և ուկր. գյուղեր: Սիբիրյան երկաթուղու կառուցումից (1891—1904) հետո աճեցին առևտուրը և ապրանքա-դրամական հարաբերությունները: Քաղաքների զարգացումը, քաղաքային բնակչության աճը կարևոր նշանակություն ունեցան ղազախ ժողովրդի մշակույթի զարգացման համար: Ռուս. առաջավոր մշակույթի և գիտության ազդեցությամբ էին գործում ղազախ լուսավորիչներ Չոկան Վալիխանովը, Իբրայ Ալթընսարինը, Աբայ Կունանբաևը և ուրիշներ:

Մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը Ղ. ռուս. արդյունաբերության գաղութային վաճառահանման շուկան էր և հումքի աղբյուրը: XX դ. սկզբին Ղ-ի տնտեսության մեջ էին թափանցել ոչ միայն ռուս, այլև օտար (անգլ., ֆրանս., ամերիկյան) կապիտալներ, որոնց հիմքի վրա առաջացել էր կապիտալիստական արտադրություն (լեռնահանքային, նավթի հանույթի ևն): Ձեռնարկությունների մեծ մասը մանր էր: Խոշոր արդյունաբերության մեջ 1913-ին զբաղված էր շուրջ 20 հզ. բանվոր: Սաղմնավորվում էր ղազախ բուրժուազիան, ձևավորվում ազգային պրոլետարիատը: Ղ-ում առաջին մարքսիստները ռուս աքսորական հեղափոխականներն էին՝ Վ. Խարիտոնովը, Պ. Կաշինսկին, Ջ. Գուսևան, Պ. Պոկրովսկին և ուրիշներ: 1903-ի մայիսի 1-ին Ուրալսկի մարքսիստական խմբակի նախաձեռնությամբ տեղի ունեցավ քաղ. առաջին գործադուլը: 1905—07-ի հեղափոխության տարիներին գործադուլային շարժումն ուժեղացավ: Ստոլիպինյան ագրարային ռեֆորմի շրջանում (1906—12) ցարական կառավարությունը Ղ. տեղափոխեց ավելի քան 438 հզ. գյուղացիական տնտեսություն: Ցարիզմի գաղութատիրական քաղաքականությունն ուղղված էր ղազախ ժողովրդի ռուսացմանը և խոչընդոտում էր նրա ազգային տնտեսության ու մշակույթի զարգացմանը: 1916-ին Ղ-ում բռնկեց ազգային-ազատագրական ապստամբություն: Տուրգայի մարզում ապստամբությունը (Ամանգելդի Իմանովի գլխավորությամբ) շարունակվեց մինչև 1917-ի Փետրվարյան հեղափոխությունը: Հեղափոխությունից հետո Ղ-ում ևս հաստատվեց երկիշխանություն: Առաջացան սովետներ և բուրժ. Ժամանակավոր կառավարության տեղական մարմինը՝ Թուրքեստանյան կոմիտեն: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո սովետական իշխանություն հաստատվեց 1917-ի նոյեմբերին՝ Սիրդարյայի (Տաշքենդ կենտրոնով), 1917-ի դեկտեմբեր—1918-ի հունվարին՝ Ակմոլինսկի մարզում, 1918-ի հունվար—փետրվարին՝ Տուրգայի մարզում և Սեմիպալատինսկում, մարտին՝ Վերնոյեում և Սեմիրեչիեում: Սովետական իշխանության հաստատումից հետո հողը բռնագրավվեց հօգուտ ղազախ և ռուս աշխատավորների, ազգայնացվեցին արդ. խոշոր ձեռնարկությունները: 1918-ի գարնան-ամռանը Ղ-ի մեծ մասը զավթեցին ինտերվենտները (Չեխոսլովակյան կորպուս) և սպիտակգվարդիականները, որոնց հետ համագործակցում էին ղազախ բուրժուա-ազգայնականները: Ղ-ի աշխատավորներին մեծ օգնություն էր ցույց տալիս Սովետական Ռուսաստանը: Թշնամու թիկունքում կռվում էին պարտիզանական ջոկատներ: 1919-ի հունվ. 22—24-ին ազատագրվեցին Օրենբուրգը, Ուրալսկը, ապրիլի 5-ին՝ Կուստանայը: 1919-ի օգոստոսին ստեղծված Թուրքեստանյան ռազմաճակատի զորքերը (հրամանատար՝ Մ. Ֆրունզե, ռազմահեղափոխական խորհրդի անդամ՝ Վ. Կույբիշև) հս-ից և Թուրքեստանի ԻՍՍՀ-ի զորքերը՝ հվ-ից ջախջախեցին Կոլչակի բանակը: 1920-ի սկզբին ավարտվեց Ղ-ի արմ. շրջանների, մարտին՝ Սեմիրեչիեի ազատագրումը:

Ղազախական սովետական պետականության սկիզբը դրվեց 1920-ի օգոստ. 26-ին՝ ՌՍՖՍՀ-ի կազմում՝ «Կիրգիզական Ինքնավար Սովետական Սոցիալիստական Հանրապետություն ստեղծելու մասին» դեկրետով (ստորագրել էին Վ. Ի. Լենինը և Մ. Ի. Կալինինը): Հանրապետության (Օրենբուրգ մայրաքաղաքով) կազմում ընդգրկվեցին ղազախներով բնակեցված շրջանները: 1920-ի հոկտ. 4—12-ին Օրենբուրգում կայացավ հանրապետության սովետների հիմնադիր համագումարը, որն ընտրեց Կենտգործկոմ (նախագահ՝ Ս. Մենդեշև) և Ժողկոմխորհ (նախագահ՝ Վ. Ռադուս-Զենկովիչ): 1921-ի հունիսին կազմավորվեց ՌԿ(բ)Կ ղազախական մարզային կազմակերպությունը: Վերականգնվում էր ժողտնտեսությունը: 1921—22-ին անցկացվեց հողա-ջրային ռեֆորմ: 1924-ի հունվ. 5—10-ին հանրապետության Սովետների IV համագումարը քննարկեց և ընդունեց սահմանադրության նախագիծ: 1924—25-ին Միջին Ասիայի ազգային-պետական բաժանման հետևանքով հանրապետության կազմում ընդգրկվեցին ղազախներով բնակեցված նոր շրջաններ: 1925-ի ապրիլին Սովետների համաղազախական V համագումարը վերականգնեց ղազախ ժողովրդի պատմականորեն ճիշտ անվանումը, և հանրապետությունը սկսեց կոչվել Ղազախական ԻՍՍՀ: 1925—30-ին Ղազախական ԻՍՍՀ-ի կազմում էր Կարակալպակյան ԻՄ: 1929-ից Ղ-ի մայրաքաղաքը դարձավ Ալմա Աթան: ՍՍՀՄ 1936-ի սահմանադրությամբ Ղազախական ԻՍՍՀ վերակազմվեց միութենական հանրապետության, որի սահմանադրությունն ընդունվեց 1937-ին (նորը հաստատվել է 1978-ին):

Ղազախները դեպի սոցիալիզմ անցում կատարեցին՝ շրջանցելով կապիտալիզմը: Զարկ տրվեց Ղ-ի ինդուստրացմանը, նախապատերազմյան տարիներին կառուցվեց շուրջ 200 արդ. ձեռնարկություն: 1929-ին ծավալվեց գյուղատնտեսության կոլեկտիվացման զանգվածային շարժում: 1937-ին կոլեկտիվ տնտեսություններում միավորված էր գյուղացիական տնտեսությունների 97,5%-ը: Ղ. քոչվոր-անասնապահական, գաղութային ծայրամասից վերածվեց ինդուստրիալ-ագրարային հանրապետության: Կուլտուրական հեղափոխության շնորհիվ Ղ-ում վերացան անգրագիտությունը, ինչպես նաև տոհմատիրական ու ֆեոդալական մնացուկները, աճեցին ազգային կադրերը, բացվեցին բուհեր, գիտահետազոտական հիմնարկներ,

Ցելինոգրադ. Խաղաղության պողոտան



զարգացան ղազախական սովետական գրականությունն ու արվեստը: Նախապատերազմյան տարիներին սոցիալիզմը Ղ-ում հիմնականում կառուցվեց: Ղազախ ժողովուրդը վերածվեց սոցիալիստական ազգի: 1941—45-ի Հայրենական մեծ պատերազմի տարիներին հազարավոր ղազախստանցիներ սովետական բանակի շարքերում կռվում էին գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ: Մոսկվայի մարտերում հռչակվեց 316-րդ (8-րդ գվարդիական) հրաձգային դիվիզիան՝ Ի. Պանֆիլովի հրամանատարությամբ (տես *Պանֆիլովականներ*), 512 ղազախստանցիներ արժանացան Սովետական Միության հերոսի, այդ թվում՝ 4 օդաչուներ՝ կրկնակի հերոսի կոչման, ավելի քան 60 հզ. մարդ պարգևատրվեց շքանշաններով ու մեդալներով: Հանրապետության տարածքում տեղաբաշխվեցին էվակուացված ավելի քան 140 ձեռնարկություններ և ավելի քան 1 մլն մարդ:

Ետպատերազմյան տարիներին ղազախ ժողովուրդը, սովետական բոլոր ժողովուրդների հետ, ավարտեց սոցիալիզմի կառուցումը: 1950-ական թթ. յուրացվեցին խամ ու խոպան հողերը. Ղ. դարձավ հացահատիկի ու մսի արտադրության երկրի առաջատար շրջաններից մեկը:

Ձեռք բերած նվաճումների համար հանրապետությունը պարգևատրվել է Լենինի (1956), Հոկտեմբերյան հեղափոխության (1970), Ժողովուրդների բարեկամության (1972) շքանշաններով:

**VI. Ղազախստանի կոմունիստական կուսակցությունը**

Ղ-ի կոմունիստական կուսակցությունը ՍՄԿԿ բաղկացուցիչ մասն է: Մարքսիզմը և ս-դ. շարժումը Ղ-ում սկսել է տարածվել XIX—XX դդ. սահմանագծին: 1905—07-ի հեղափոխության շրջանում երկրամասում կար ս-դ. 3 կազմակերպություն (Պետրոպավլովսկում, Ուրալսկում, Սեմիպալատինսկում): Հաշվի առնելով Ղ-ում կուսակցական կազմակերպությունների միավորման անհրաժեշտությունը, ՌԿ(բ)Կ ԿԿ 1920-ի ապրիլի 30-ին ստեղծեց ՌԿ(բ)Կ Կիրգիզական (Ղազախական) մարզային բյուրո (1921-ին ընտրվեց կուսակցության մարզկոմ), իսկ 1922-ի ապրիլին՝ ՌԿ(բ)Կ ԿԿ Կիրգիզական (Ղազախական) բյուրոն, որոնք մեծ աշխատանք կատարեցին Ղ-ի կուսակցական կազմակերպությունների ամրապնդման, ժողտնտեսության վերականգնման, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման, կուլտուրական հեղափոխության իրականացման ուղղությամբ: Ղազախական ՍՍՀ ստեղծման (1936) կապակցությամբ ՀամԿ(բ)Կ ԿԿ 1937-ի ապրիլին երկրային (1925-ին մարզկոմը վերանվանվել էր երկըրկոմ) կուսակցական կազմակերպությունը վերակազմավորվեց Ղ-ի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության: Հանրապետության կոմունիստների I համագումարը (1937-ի հունիս) ձևակերպեց ՂԿ(բ)Կ-ի ստեղծումը: Մինչև 1980-ը տեղի է ունեցել Ղ-ի կոմկուսի 24 համագումար: Ղ-ի կոմկուսն ունի 686918 անդամ և 28990 անդամության թեկնածու (20724 սկզբնական կուսակցական կազմակերպություն, 1980-ի հունվար): 1933—37-ին Ղ-ի երկրկոմի, ապա կոմկուսի ԿԿ առաջին քարտուղար է եղել Լ. *Միրզոյան*: Ղ-ի կոմկուսի ԿԿ առաջին քարտուղարն է Դ. Ա. Կունաևը (1960—62-ին և 1964-ից):

**VII. Ղազախստանի լենինյան կոմունիստական երիտասարդական միությունը**

Ղ-ի ԼԿԵՄ-ը ՀամԼԿԵՄ բաղկացուցիչ մասն է: Կազմակերպչորեն ձևավորվել է 1919—21-ին: Ղ-ի ԼԿԵՄ-ը ունի 2 129 434 անդամ (24 747 սկզբնական կոմերիտական կազմակերպություն, 1980-ի հունվար):

**VIII. Արհմիությունները**

Ղ-ի արհմիությունները ՍՍՀՄ արհմիությունների բաղկացուցիչ մասն են: Կազմավորվել են 1905—07-ի հեղափոխության շրջանում: Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո Ղ-ի քաղաքներում և արդ. կենտրոններում ստեղծվել են արհմիութենական կազմակերպություններ: Առաջին՝ միավորող կոնֆերանսը տեղի է ունեցել 1921-ին: Ղ-ի արհմիություններն ունեն 6 510 831 անդամ (39 619 սկզբնական արհմիութենական կազմակերպություն, 1980-ի հունվար):

**IX. Ժողովրդական տնտեսությունը**

Արդյունաբերության համախառն արտադրանքը 1977-ին, 1913-ի համեմատությամբ, ավելացել է 216, գյուղատնտեսությանը՝ 7 անգամ: 1920-ին ծանր ինդուստրիային բաժին էր ընկնում Ղ-ի ամբողջ արտադրանքի միայն 12%-ը, այժմ՝ 76%-ը: Ղ. կապիտալ ներդրումների բացարձակ ծավալով միութենական հանրապետությունների մեջ գրավում է 3-րդ տեղը ՌՍՖՍՀ-ից և Ուկրաինայից հետո:

**Արդյունաբերությունը**: Արդյունաբերության հիմքն են բնական հարուստ հանքային պաշարները և գյուղատնտ. հումքը: Զարգացած են սև և գունավոր մետալուրգիան, ածխի, նավթի, գազի, քիմ., մեքենաշինական, թեթև, սննդի և այլ ճյուղեր: Ղ-ի արդ. արտադրանքը արտահանվում է ավելի քան 80 երկիր: Առաջատարը գունավոր մետալուրգիան է, որի հիմնական շրջաններն են Հանքային Ալթայը (Ուստ Կամենոգորսկի կապարի-ցինկի, տիտանի և մագնեզիումի, Լենինոգորսկի



Լենինոգորսկի ցինկի գործարանը

բազմամետաղների, Զիրյանովսկի կապարի, Արևելաղազախստանյան պղնձաքիմիական կոմբինատներ Իրտիշի պղնձահալման գործարան), Կենտրոնական Ղազախստանը (Բալխաշի և Ջեզկազգանի լեռնամետալուրգիական, Կարագայլիի հանքահարստացուցիչ կոմբինատներ) և Հարավային Ղազախստանը (Չիմքենդի կապարի գործարան, Աչիսայի և Թեկելիի բազմամետաղների կոմբինատներ): Պավլոդարի մարզում կա ալյումինի գործարան, կառուցվում է (1978) Բոզշակոլի հանքահարստացուցիչ կոմբինատը:

Ղ-ի արդյունաբերության հեռանկարային ճյուղ է սև մետալուրգիան: Հանրապետությանը բաժին է ընկնում ՍՍՀՄ երկաթի հանքաքարի պաշարների մոտ 11%-ը, մանգանի՝ ավելի քան 30%-ը, քրոմիտների պաշարներով ՍՍՀՄ-ում գրավում է առաջին տեղը: Ղ-ի սև մետալուրգիայի առաջնեկը Կարագանդայի մետալուրգիական խոշոր կոմբինատն է Տեմիրթաուում: Կուստանայի մարզում է Սոկոլովսկ—Սարբայսկի՝ երկրի խոշորագույն հանքահարստացուցիչ կոմբինատը: Զգալիորեն ավելացել է Աթասուի երկաթի, Ջեզդինի մանգանի հանքաքարի (Ջեզկազգանի մարզ) և քրոմիտների (Ակտյուբինսկի մարզ) արդյունահանումը: Սկսվել է Լիսակովսկի երկաթի հանքավայրի (Կուստանայի մարզ) շահագործումը: Հանրապետությունում գործում են Ակտյուբինսկի և Երմակի երկաթի համաձուլվածքների գործարանները: Ղ-ի արդյունաբերության կարևոր ճյուղերից է ածխարդյունաբերությունը, որի զարգացումը կապված է Կարագանդայի (ՍՍՀՄ-ում 3-րդ տեղը կոքսացվող ածխի արդյունահանմամբ) և Էկիբաստուզի ածխավազանների յուրացման հետ: Էկիբաստուզի ածխի բազայի վրա X հնգամյակում սկսվել է վառելիքաէներ-

Արդյունաբերական արտադրանքի կարևոր տեսակների արտադրությունը

| Արտադրանքի տեսակներ | 1940 | 1960 | 1970 | 1978 |
|---|---|---|---|---|
| Էլեկտրաէներգիա, մլն *կվտ.ժ* | 0,6 | 10,5 | 34748 | 59000 |
| Ածուխ, մլն *տ* | 6,97 | 32,37 | 61,58 | 93,67* |
| Երկաթի հանքաքար, մլն *տ* | — | 5,8 | 18,2 | 24,9 |
| Հանքային պարարտանյութեր, հզ. *տ* | — | 88 | 382,4 | 1247,5* |
| Մետաղահատ հաստոցներ, հզ. հատ | — | 0,9 | 2,3 | 2,6 |
| Էքսկավատորներ, հատ | — | 110 | 668 | 1700 |
| Գուլպաներ, մլն զույգ | 0,2 | 23,9 | 56,3 | 67,2* |
| Տրիկոտաժե սպիտակեղեն, մլն հատ | 0,1 | 13,1 | 37,4 | 55* |
| Տրիկոտաժե վերնազգեստ, մլն հատ | 0,2 | 3,4 | 23,9 | 28,3* |
| Շաքարավազ, հզ. *տ* | 70,9 | 122,8 | 176,2 | 167,6 |
| Միս, հզ. *տ* | 9,7 | 278,2 | 525 | 618,4 |
| Կենդանական յուղ, հզ. *տ* | 12,1 | 29,1 | 42,2 | 57,8 |
| Կաթնամթերք (վերածված կաթի), հզ. *տ* | 97 | 288,2 | 794,7 | 981,1* |
| Պահածոներ (մլն պայմանական տուփ) | 30,2 | 159,2 | 303,1 | 388,3 |
| Ալյուր, հզ. *տ* | 924 | 1061 | 1726 | 1852* |

* 1977

գետիկական խոշոր համալիրի կառուցումը: Նավթարդյունաբերությունը կենտրոնացած է Ղ-ի արմ-ում: Նավթին համընթաց արդյունահանվում է նաև գազ: Հանրապետությունում նավթավերամշակման առաջին գործարանը կառուցվել է Գուրևում (Էմբայի ավազան): 1960-ական թթ., երբ Մանգըշլակ թերակղզում հայտնաբերվեցին նավթի (Ուզեն, Ժետըբայ) և գազի նոր պաշարներ, Ղ-ում սկսվեց նավթարդյունաբերության զարգացման նոր փուլ: Պավլոդարում և Չիմքենդում կառուցվում են նավթավերամշակման նոր գործարաններ: Արևմտյան Ղազախստանի գազի հարուստ պաշարների հիման վրա աշխատում է Ղ-ի գազավերամշակման գործարանի I հերթը: Կառուցվում է (1978) Շևչենկոյի պլաստմասսաների գործարանը: Ղ-ի էլեկտրակայանների ընդհանուր հզորությունը 1977-ին, 1940-ի համեմատությամբ, աճել է 53 անգամ, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 88 անգամ: Այս ճյուղը առավել զարգացում ստացավ սկզբում Կենտրոնական (Կարագանդայի ածխի) և Արևելյան (Իրտիշի և նրա վտակների հիման վրա) Ղազախստանում: Առավել խոշոր են Կարագանդայի ՊՇԷԿ-1-ը և ՊՇԷԿ-2-ը, Բուխտարմայի և Ուստ Կամենոգորսկի ՀԷԿ-երը: Էլեկտրաէներգիայի արտադրության կարևոր շրջան է դարձել Հարավային Ղ. (Ջամբուլի ՊՇԷԿ, Չարդարինի և Կապչագայի ՀԷԿ-եր): Արևմտյան Ղ-ում զարգանում է ատոմային էներգետիկան: Շևչենկոյում կառուցվել է արագ նեյտրոնների ռեակտոր, որի հիման վրա ստեղծվել է ծովի ջրի աղազրկման փորձաարդյունաբերական կայան: Պավլոդարի մարզում, Էկիբաստուզի ածխի բազայի վրա, էլեկտրաէներգետիկական արդյունաբերության նոր հզոր կենտրոն է ստեղծվում: Այստեղ գործում է Պավլոդարի ՋԷԿ-ը, կառուցվել է Երմակի ՊՇԷԿ-ը:

Ղ-ում քիմ. արդյունաբերությունը ըստեղծվել է սովետական իշխանության տարիներին: Հանրապետությունում արտադրվում են մեծ քանակությամբ հանքային պարարտանյութեր, պոլիէթիլեն, քրոմի միացություններ, արհեստական մանրաթել, քացախալդեհիդ, արդյունահանվում են ֆոսֆորիտներ, սուլֆիտա-բարիտային հումք, նատրիումի սուլֆատ, կալցիումի կարբիդ, Ջամբուլի մարզում կառուցվել է ֆոսֆորիտի արդյունահանման և հարստացման «Կարաթաու» լեռնաքիմիական կոմբինատը, Չիմքենդում՝ ֆոսֆորային աղերի, Ջամբուլում՝ սուպերֆոսֆատի և ֆոսֆատի գործարանները: Քիմ. կոմբինատ կա Ալգայում, գործարան՝ Գուրևում: Ղ-ում մեքենաշինությունը (դարբնոցա-մամլիչ սարքավորում, մետաղահատ հաստոցներ, գյուղատնտ մեքենաներ ևն) և մետաղամշակումը զարգացել են Հայրենական մեծ պատերազմի տարիներին: Խոշոր կենտրոններն են Ալմա Աթան, Կարագանդան, Պետրոպավլովսկը, Ցելինոգրադը, Չիմքենդը, Ուստ Կամենոգորսկը, Ակտյուբինսկը, Պավլոդարը: Թեթև արդյունաբերության կարևոր ճյուղերն են կաշվի, կոշիկի, մորթու, կարի, տեքստիլ արդյունաբերությունը: Զարգանում է բամբակեղենի և կահույքի արդյունաբերությունը (Ալմա Աթա, Չիմքենդ):

Սննդի արդյունաբերության համախառն արտադրանքի մոտ կեսը կապված է անասնապահական հումքի վերամշակման հետ: Մսի արտադրությամբ (Սեմիպալատինսկ, Պետրոպավլովսկ, Ալմա Աթա, Ուրալսկ) Ղ. ՍՍՀՄ-ում գրավում է 3-րդ տեղը Ուկրաինայից և ՌՍՖՍՀ-ից հետո: Սննդի արդյունաբերության մյուս ճյուղերը կապված են բուսական հումքի վերամշակման հետ: Շաքարի գործարաններ կան Ջամբուլի, Ալմա Աթայի և Տալդի Կուրգանի մարզերում: Զարգացած է ձկնարդյունաբերությունը: Ձկնորսությամբ զբաղվում են Կասպից և Արալյան ծովերում, Բալխաշ, Զայսան լճերում: Գուրևում, Արալսկում և Բալխաշում գործում են ձկնավերամշակման և ձկան պահածոների գործարաններ:

**Գյուղատնտեսությունը**: Ղ-ին բաժին է ընկնում ՍՍՀՄ գյուղատնտ. հողահանդակների ընդհանուր տարածության 1/3-ը: Հատկապես մեծ է արոտավայրերի և խոտհարքների տեսակարար կշիռը (մոտ 187 մլն *հա*): Վարելահողերը զբաղեցնում են ավելի քան 35 մլն *հա*: Խամ ու խոպան հողերի յուրացման հետ կապված ավելացել է վարելահողերի տարածությունը:

Գյուղատնտ. հիմնական կուլտուրաների ցանքատարածությունները (հզ. *հա*)

| Կուլտուրաներ | 1913 | 1940 | 1960 | 1970 | 1979 |
|---|---|---|---|---|---|
| Գյուղատնտ. բոլոր կուլտուրաները | 4145,7 | 6808,6 | 28542,7 | 30969,9 | 35952,3 |
| այդ թվում՝ | | | | | |
| Հացահատիկները, որից | 3880,8 | 5817,1 | 21949,9 | 22603 | 25298,2 |
| ցորեն | 2507,1 | 3446,4 | 18062,6 | 17399,6 | 17101 |
| Բամբակ | 15 | 101,8 | 105,6 | 117,5 | 119,3 |
| Շաքարի ճակնդեղ | — | 15,4 | 60 | 70,1 | 75,2* |
| Արևածաղիկ | 18,8 | 164,9 | 134,6 | 93,3 | 89,7* |
| Կարտոֆիլ | 41,5 | 99,7 | 174,2 | 192,4 | 176,3* |
| Բանջարեղեն | 12,2 | 22,9 | 46,1 | 51,4 | 56,3* |

*1977

Կարճ ժամանակում հերկվել են 25 մլն *հա* նոր հողեր: Ցանքերի աճը հիմնականում կատարվեց հացահատիկային կուլտուրաների հաշվին, որը ապահովեց Ղ-ում ապրանքային հացահատիկի համամիութենական նոր խոշոր բազայի ստեղծում: Ղ-ում կա 2059 սովետական տնտեսություն և 400 կոլտնտեսություն, 19 ձկնորսական արտել (1979).

Հացահատիկի մշակման հիմնական շրջանը Ղ-ի հս. է, շաքարի ճակնդեղինը՝

Գյուղատնտեսական արտադրանքի հիմնական տեսակների արտադրությունը (հզ. *տ*)

| Արտադրանքի տեսակներ | 1913 | 1940 | 1971—1975* | 1977 |
|---|---|---|---|---|
| Հացահատիկ | 2155 | 2515 | 21662 | 27900** |
| Բամբակ | 10 | 93 | 305 | 323,8 |
| Շաքարի ճակնդեղ | — | 384 | 2194 | 1687,4 |
| Կարտոֆիլ | 178 | 394 | 1818 | 2189,2 |
| Բանջարեղեն | — | 172 | 893 | 893 |
| Միս | 435 | 226 | 986 | 1040,4** |
| Կաթ | 351 | 1099 | 4059 | 4414,5** |
| Բուրդ | 42 | 13 | 101 | 105,6** |
| Ձու (մլն հատ) | 228 | 307 | 2430 | 3254,1** |

* Միջին տարեկան
** 1978:



Հացահատիկի բերքահավաքը Կուստանայի մարզում

Ջամբուլի, Տալդի Կուրգանի և Ալմա Աթայի մարզերը, բամբակենունը՝ Չիմքենդի մարզը, արևածաղկինը՝ Արևելաղազախստանյան, Սեմիպալատինսկի և Պավլոդարի մարզերը: Հանրապետության հվ-ում, հատկապես Տյան Շանի նախալեռներում, զարգացած է պտղաբուծությունը և խաղողագործությունը:

Ղ. խոշոր անասնապահական բազա է երկրի արլ-ում: Միութենական հանրապետությունների մեջ գրավում է 2-րդ տեղը ոչխարների և այծերի, 3-րդ տեղը՝ խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակով: 1979-ին Ղ-ում հաշվվում էր 8323,9 հզ. գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 35024,6 հզ. գլուխ ոչխար և այծ, 3096,2 հզ. խոզ, 1254,3 հզ. ձի և 123,8 հզ. ուղտ:

Անասնապահության մոտ 40%-ը կենտրոնացած է Ղ-ի հվ. շրջաններում, որտեղ տիրապետում է մսաբրդատու և կարակուլային ոչխարաբուծությունը: Հս-ում կենտրոնացած է խոշոր եղջերավոր անասունների մոտ 45%-ը (հիմնականում կաթնամսատու ուղղության): Զարգացող ճյուղ է թռչնաբուծությունը (41,9 մլն, 1978):

**Տրանսպորտը**: Երկաթուղիների երկարությունը 14,25 հզ. *կմ* է (1979): Դեռ 1920-ական թթ. կառուցվել էին Պետրոպավլովսկ-Կոկչետավ-Կուրորտ Բորովոյե, Բուռնոյե—Ջամբուլ—Ֆրունզե երկաթուղիները. I հնգամյակի խոշոր կառույցներից է Թուրքեստան—Սիբիր մայրուղին, 1442 *կմ*: Հետագայում կառուցվել են Ցելինոգրադ—Կարագանդա—Բալխաշ, Ժարիկ—Ջեզկազգան, Ռուբցովսկ—Ուստ Կամենոգորսկ—Լենինոգորսկ, Գուրև—Օրսկ, Ցելինոգրադ—Պավլոդար, Մոինտի—Չու, Կուստանայ—Տոբոլ—Լիսակովսկ, Տոբոլ—Ջետիգարա, Եսիլ—Արկալըկ, Կարագանդա—Կարագայլի, Կարաթաու—

Ժանատաս, Մակատ—Շևչենկո—Ուզեն երկաթուղիները: Ավտոճանապարհների երկարությունը 97,3 հզ. *կմ* է (1979), որից 64,3 հզ. *կմ*-ը կոշտ ծածկով: Առավել խոշոր ավտոճանապարհներն են. Ալմա Աթա—Ֆրունզե—Ջամբուլ—Չիմքենդ, Ալմա Աթա—Տալդի Կուրգան—Ուստ Կամենոգորսկ, Չիմքենդ—Կզըլ Օրդա—Ակտյուբինսկ—Ուրալսկ, Սեմիպալատինսկ—Պավլոդար:

Նավարկություն կա Կասպից, Արալյան ծովերում, Բալխաշ, Զայսան լճերում և Իրտիշ, Ուրալ, Սիրդարյա, Իլի գետերի վրա: Կարևոր գետային նավահանգիստներ են Պավլոդարը, Սեմիպալատինսկը, Ուստ Կամենոգորսկը (Իրտիշի վրա), Ուրալսկը, Գուրևը (Ուրալ գետի վրա): Ավիագծերով հանրապետությունը կապված է ՍՍՀՄ-ի բոլոր խոշոր քաղաքների հետ: Կարևոր նշանակություն ունի խողովակաշարային տրանսպորտը: Գործում են Գուրև—Օրսկ (մոտ 900 *կմ*), Ուզեն—Մակատ—Կույբիշև (1700 *կմ*), Ուզեն—Ժետըբայ—Շևչենկո (141 *կմ*) նավթամուղները, Մուբարեկ—Տաշքենդ—Չիմքենդ—Ֆրունզե—Ալմա Աթա (1317 *կմ*) գազամուղը: Կառուցվում է (1979) Օմսկ—Պավլոդար—Չիմքենդ (ավելի քան 2000 *կմ*) նավթամուղը: Ղ-ով են անցնում Միջին Ասիա—Կենտրոն, Բուխարա—Ուրալ գազամուղները:

**Տնտեսական կապերը Հայկական ՍՍՀ-ի հետ**: Ղ-ի տնտ. կապերը Հայկ. ՍՍՀ-ի հետ արտահայտվում են արտադրատեսակների փոխադարձ մատակարարման, առաջավոր փորձի փոխանակման, տեխնոլոգիական պրոցեսների մշակման, բնական ռեսուրսների յուրացման և շատ այլ բնագավառներում: Ղ. Հայկ. ՍՍՀ-ին մատակարարում է գունավոր մետաղներ (բրոնզ, արճիճ, անագ, արույր, պղնձի գլոցվածք, բիսմութ), մեքենաշինության արտադրատեսակներ (մետաղահատ հաստոցներ ևն), որոշ տեսակի տրանսֆորմատորներ ևն: Հայկ. ՍՍՀ-ից Ղ. ստանում է շարժական էլեկտրակայաններ, ուժային տրանսֆորմատորներ, գեներատորներ, էլեկտրաշարժիչներ, էլեկտրաճշգրիտ չափիչ սարքեր, հիդրոպոմպեր, կոմպրեսորներ, մամլիչներ, գայլիկոնիչ, ռանդիչ, ունիվերսալ շրջատաշիչ հաստոցներ, ցիանամիդ, նաիրիտ, պոլիվինիլացետատային սպիրտ, լաքեր ու ներկեր, ավտոդողեր, սննդարդյունաբերության արտադրանք (հատկապես ծխախոտ): 1976—79-ին միջին հաշվով Ղ-ին տարեկան մատակարարվել է 16 մլն շիշ տարբեր տեսակի հանքային ջրեր («Դիլիջան», «Ջերմուկ», «Արզնի» ևն): Հայկ. ՍՍՀ-ից միութենական մյուս հանրապետություններին մատակարարվող արդ. արտադրանքի ամբողջ ծավալի ավելի քան 6%-ը բաժին է ընկնում Ղ-ին:

**X. Բժշկա-աշխարհագրական բնութագիրը:**

1976-ին Ղ-ում ծնունդը կազմել է 1000 բնակչին՝ 24,3, ընդհանուր մահացությունը՝ 7,2: Նախահեղափոխական Ղ-ում հաճախակի էին բնական ծաղկի, խոլերայի, ժանտախտի, մալարիայի համաճարակները, տարածված էին տուբերկուլոզը, բծավոր, ետադարձ և որովայնային տիֆերը, դիֆթերիան, բակտերիային դիզենտերիան: Սովետական կարգերի հաստատումից հետո վերացվել են բնական ծաղիկը, խոլերան, ժանտախտը, մալարիան, գոնջությունը: Զգալիորեն նվազել են դիֆթերիան, կապույտ հազը, քոսը և մաշկի սնկիկային հիվանդությունները: 1979-ին Ղ-ում կար 1,7 հզ. հիվանդանոցային հիմնարկ՝ 192,6 հզ. մահճակալով (1000 բնակչին՝ 12,9 մահճակալ), ամբուլատոր-պոլիկլինիկային 2,2 հզ. հիմնարկ. 1979-ին աշխատել են 45,7 հզ. բժիշկ (1000 բնակչին՝ 3,1 բժիշկ), 145,6 հզ. միջին բուժաշխատող:



Ալմա Աթա. կուլտուրայի և հանգստի զբոսայգի

1977-ին գործել են հակատուբերկուլոզային 55, մաշկա-վեներական 65, ուռուցքաբանական 18, նյարդա-հոգեբուժական 18, հակախիպիպային 2, նարկոլոգիական 2 դիսպանսերներ, շտապ օգնության 287 կայան, 1,8 հզ. դեղատուն (այդ թվում՝ 262 հիվանդանոցային), 5,4 հզ. դեղատնային կետ: Բժշկ. կադրեր են պատրաստում բժշկ. 5 ինստ-ներ (Ալմա Աթա, Սեմիպալատինսկ, Կարագանդա, Ցելինոգրադ, Ակտյուբինսկ), միջին բուժանձնակազմ՝ բժշկ. 26 ուսումնարաններ: Գործում են (1977) բժշկ. 10 ԳՀԻ, ինչպես նաև բժիշկների կատարելագործման ինստ.: 1977-ին Ղ-ում կար 323 առողջարան և հանգստյան տուն: Հայտնի են Բորովոյե, Ալմա Արասան, Արասան Կապալ, Կամենսկոյե պլատո, Մույալդը, Չիմգան, Յանըկուրգան, Աուլ առողջարանները:

**XI. Ժողովրդական կրթությունը և կուլտուր-լուսավորական հիմնարկները**

Մինչև XIX դ. կեսը Ղ-ի տարածքում կային միայն մահմեդական դպրոցներ՝ մեկթեբներ և մեդրեսեներ, որտեղ երեխաներին սովորեցնում էին արաբերեն գրել-կարդալ, կրթում կրոնական դոգմաների ոգով: XIX դ. 60-ական թթ., Ռուսաստանին միանալուց հետո, Ղ-ում բացվել են ղազախական առաջին աշխարհիկ դպրոցները: Ղազախական մտավորականության առաջավոր ներկայացուցիչներ Չ. Վալիխանովը, Ի. Ալթընսարինը, Աբայ Կունանբաևը պրոպագանդել են ռուս. մշակույթը, պայքարել աշխարհիկ կրթության տարածման համար: XIX դ. վերջին Ղ-ում ձևավորվել է դպրոցական 2 համակարգ (դպրոցներ ռուս. վարչական աշխատողների և ղազախական հարուստ վերնախավի երեխաների համար): Նախասովետական տարիներին գրագետ էր ղազախների 2%-ը:

Սովետական կարգերի հաստատումից հետո Ղ-ում ժողկրթությունը արմատապես փոխվեց: Բացվեցին նոր ուս. հաստատություններ, կազմակերպվեցին անգրագիտության վերացման կետեր: Կարճ ժամկետում պատրաստվեցին ուսուցիչներ և լուսավորության բնագավառի աշխատողներ: Ուսուցումը տարվում էր մայրենի լեզվով: 1930-ին մտցվեց համընդհանուր տարրական ուսուցում, 1931-ին՝ 7-ամյա ուսուցում քաղաքներում, բանվորական ավաններում, 1951/52 ուս. տարում իրականացվեց 7-ամյա պարտադիր կրթությունը:

Մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը Ղ-ում նախադպրոցական հիմնարկներ չկային: 1920-ին կազմակերպվել է 20 մանկապարտեզ: 1980-ին գործում էր 6000 նախադպրոցական հիմնարկ: 1979/80 ուս. տարում բոլոր տիպի հանրակրթական դպրոցներում սովորել է 4 մլն մարդ: Ղ. ունի (1980) 53 բուհ՝ Ս Մ. Կիրովի անվ. ղազախական համալսարանը (հիմնադրվել է 1934-ին), Ղազախական պոլիտեխնիկական (1960), Ղազախական գյուղատնտ. (1930), Աբայի անվ. մանկավարժական (1928) ինստ-ները (բոլորն էլ՝ Ալմա Աթայում) ևն:

Հանրապետությունում գործում է ավելի քան 9400 մասսայական գրադարան (խոշորագույնն է Ա. Ս. Պուշկինի անվ. պետ. գրադարանը), 30 թանգարան, այդ թվում՝ Ղ-ի Պետ. կենտրոնական, Տ. Գ. Շևչենկոյի անվ. հանրապետական գեղարվեստական պատկերասրահը, Մ. Աուեզովի (բոլորն էլ՝ Ալմա Աթայում), Աբայ Կունանբաևի, Ֆ. Մ. Դոստոևսկու (Սեմիպալատինսկ) ևն, զավառագիտական թանգարաններ: Գործում են շուրջ 8600 ակումբային հիմնարկներ, 250 պիոներների տուն և պալատ, պատանի տեխնիկների 40, պատանի բնախույզների 25 կայան, ավելի քան 3000 մանկապատանեկան մարզադպրոց:

**XII. Գիտությունը և գիտական հիմնարկները**

**1. Բնական և տեխնիկական գիտությունները**

XIX դ. 2-րդ կեսին ռուս. մշակույթի ազդեցությամբ ձևավորվել է առաջին ղազախ գիտնական-լուսավորիչներ Չ. Վալիխանովի, Ի. Ալթընսարինի, Աբայ Կունանբաևի գիտական աշխարհայացքը: Նախահեղափոխական Ղ-ում օդերևութաբանական մի քանի կայաններից և փորձադաշտերից բացի, գիտական որևէ հիմնարկ չի եղել:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը լայն հնարավորություններ է ստեղծել Ղ-ի գիտության և մշակույթի զարգացման համար: 1920—30-ական թթ. կազմակերպվել են

գիտահետազոտական մի շարք հիմնարկներ և ինստ-ներ, գիտական ընկերություններ և փորձակայաններ: 1938-ին կազմակերպվել է ՍՍՀՄ ԳԱ ղազախական մասնաճյուղը: 1941—45-ի Հայրենական մեծ պատերազմի տարիներին գիտական հետազոտությունների շրջանակն ավելի է ընդլայնվել՝ ընդգրկելով պաշտպանական և տնտ. բնույթի կարևոր պրոբլեմներ: Զգալիորեն ավելացել է ՍՍՀՄ ԳԱ մասնաճյուղի հիմնարկությունների թիվը:

Ետպատերազմյան շրջանի առաջին տարիներին կարևոր նշանակություն են ունեցել երկրաբանության, լեռնային գործի, գունավոր մետալուրգիայի բնագավառի հետազոտությունները: 1946-ին ՍՍՀՄ ԳԱ ղազախական մասնաճյուղի հիման վրա ստեղծվել է Ղ-ի գիտությունների ակադեմիան, որի առաջին պրեզիդենտը եղել է երկրաբանների ղազախական դպրոցի հիմնադիր Կ. Ի. Սատպաևը: 1950-ական թթ. կատարվել են խամ ու խոպան հողերի յուրացման գործին նպաստող լուրջ աշխատանքներ: Մաթեմատիկայի և մեխանիկայի բնագավառում ուսումնասիրությունների հիմնական ուղղություններն են դիֆերենցիալ և ինտեգրալ հավասարումները, ֆունկցիոնալ անալիզը և ֆունկցիաների տեսությունը, հաշվողական մաթեմատիկան, դեֆորմացվող պինդ մարմինների մեխանիկան: Այս բնագավառի նվաճումները կապված են Տ. Ի. Ամանովի, Օ. Ա. Ժաուտիկովի, Ե. Ի. Կիմի և այլոց աշխատանքների հետ: Ֆիզիկական հետազոտություններն ընդգրկում են ատոմի միջուկի և տիեզերական ճառագայթների ֆիզիկան, պինդ մարմնի և կիսահաղորդիչների ֆիզիկան, մետաղաֆիզիկան են: Ֆիզիկայի զարգացման գործում մեծ ավանդ են ներդրել Լ. Ա. Վուլիսը, Վ. Մ. Կելմանը, Մ. Ի. Կորսունսկին, Գ. Դ. Լատիշևը և ուրիշներ: Աստղագիտական հետազոտությունների հիմնական ուղղություններն են մթնոլորտային օպտիկան, Արեգակի, Արեգակնային համակարգի մարմինների և միջաստղային միջավայրի ֆիզիկան, կոսմոգոնիան և կոսմոլոգիան, աստղաբուսաբանությունը (Գ. Ա. Տիխով): Աշխատանքները կատարվում են Ղազախական ՍՍՀ ԳԱ աստղաֆիզիկայի ինստ-ում (հիմնադիր՝ ակադեմիկոս Վ. Գ. Ֆեսենկով): Էներգետիկայի պրոբլեմներով զբաղվում են էներգետիկայի ԳՀԻ-ում, գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացման ինստ-ում, բուհերի ամբիոններում և նախագծային ինստ-ներում: Այս ասպարեզում հայտնի են Տ. Ի. Բատուրովի, Ռ. Ժ. Ժուլաևի, Վ. Պ. Զախարովի և այլոց աշխատանքները: Աշխարհագրական հետազոտությունները, որոնք ներառում են ֆիզիկական և տնտ. աշխարհագրությունը, կենտրոնացած են հիմնականում Ղազախական ՍՍՀ ԳԱ աշխարհագրության սեկտորում: Կազմվել է Ղ-ի հվ-արլ. լեռնային մարզերի գեոմորֆոլոգիական քարտեզ, ուսումնասիրվել են սառցադաշտերի ռեժիմն ու հաշվեկշիռը, կատարվել դրանց քարտացուցակագրումը: Լայն ճանաչում են ստացել աշխարհագրագետներ Գ. Ա. Ավսյուկի, Կ. Բ. Աիմեդովի, Ե. Ն. Գլադիշևի, Ա. Ա. Գրիգորևի և այլոց աշխատանքները: Երկրաբանության և հիդրոերկրաբանության առաջատար ճյուղերն են երկրաբանությունը, շերտագրությունը, մագմատիզմը, հնէաբանությունը, հանքային և ոչ հանքային օգտակար հանածոների, ածխի, նավթի, գազի երկրաբանությունը, երկրաֆիզիկան են: Ղ-ի ռեգիոնալ ուսումնասիրման հիմնական արդյունքներն արտացոլված են փոքր և միջին մասշտաբի երկրաբանական և օգտակար հանածոների քարտեզներում: Ուսումնասիրվել են Ղ-ի ստորգետնյա ջրերը, դրանց հիդրոդինամիկան, հիդրոքիմիան, ռեսուրսները, կազմավորման օրինաչափությունները և գործնական կիրառության հնարավորությունները: Երկրաբանական գիտության զարգացումը կապված է Ի. Ցա. Ավրովի, Ժ. Ա. Այտալիևի, Վ. Ֆ. Բեզրուկովի, Ի. Ի. Բոկի, Ն. Լ. Բուբլիչենկոյի, Դ. Ն. Կազանլիի և ուրիշների անվան հետ: Լեռնային գործի բնագավառում ուսումնասիրվում են հանքավայրերի բաց և ստորգետնյա մշակման ռացիոնալ մեթոդները, ստորգետնյա աշխատանքների մեքենայացման ու ավտոմատացման գիտական հիմունքները, ապարների քայքայման նոր եղանակները (Օ. Ա. Բայկոնուրով, Ա. Վ. Բրիչկին, Դ. Ա. Կունաև, Ն. Վ. Մելնիկով և ուրիշներ): Քիմիական հետազոտություններն ընդգրկում են հանքային պարարտանյութերի, բարձրմոլեկուլային միացությունների, ֆիզիոլոգիապես ակտիվ բնական միացությունների քիմիան, օրգ. կատալիզը, մաքուր և գերմաքուր մետաղների ստացման եղանակները, նավթաքիմիան: Իրենց աշխատանքներով հայտնի են քիմիկոսներ Ի. Ն. Ազերբաևը, Ա. Բ. Բեկտուրովը, Բ. Ա. Բերեժմանովը, Մ. Ի. Գորյաևը, Ս. Ռ. Ռաֆիկովը և ուրիշներ: Մետալուրգիայի հիմնական խնդիրը գունավոր և հազվագյուտ մետաղների ստացման, դրանց հանքաքարերի վերամշակման և հարստացման պրոբլեմների ուսումնասիրությունն է: Այս ասպարեզում մեծ ավանդ ունեն Խ. Կ. Ավետիսյանը, Ե. Ա. Բուկետովը, Ա. Մ. Կունաևը, Վ. Վ. Միխայլովը և ուրիշներ: Հողագիտության հիմնական ուղղություններն են Ղ-ում հողագոյացման պրոցեսների ուսումնասիրությունը, հողային ռեսուրսների և դրանց օգտագործման հաշվառումը, էրոզիոն պրոցեսների, հողերի բերրիության բարձրացման եղանակների ուսումնասիրումը (Ա. Ի. Բարաև, Ա. Ի. Բեսսոնով, Ի. Պ. Գերասիմով, Ս. Պ. Մատուսևիչ և ուրիշներ): Գիտական և գործնական կարևոր նշանակություն ունեցող հետազոտություններ են կատարվում նաև բուսաբանության (Ղ-ի բուսական ռեսուրսների, արոտավայրերի ու խոտհարքների արդյունավետության բարձրացման կենսաբանական հիմունքների ուսումնասիրում, ժառանգականության և փոփոխականության կառավարման ծագումնաբանական մեխանիզմի հետազոտում են), կենդանաբանության (Ղ-ի տարածքում կենդանական աշխարհի զարգացման օրինաչափությունների ուսումնասիրում, վայրի կենդանիների պահպանման, վերարտադրության և օգտագործման գիտական հիմունքների մշակում են), փորձարարական կենսաբանության (գյուղատնտ. կենդանիների ժառանգականության և անհատական զարգացման օրինաչափությունների ուսումնասիրում) և միկրոկենսաբանության (միկրոօրգանիզմների և քիմ. միացությունների ուսումնասիրում և դրանց օգտագործում անասնակերի սիլոսացման համար, անասնակերը կենսաբանական տեսակետից արժեքավոր նյութերով հարստացնելու եղանակների մշակում են) բնագավառներում: Բժշկության ասպարեզում մշակվել են մալարիայի, բրուցելոզի, ցանգուղեղի բորբոքման, պալարախտի, տրախոմայի դեմ պայքարի արդյունավետ միջոցներ: Բժշկագիտության զարգացման գործում մեծ ավանդ են ներդրել Ի. Ս. Բակալը, Ս. Բ. Բալմուխանովը, Ն. Դ. Բեկլեմիշևը, Մ. Ի. Բրյակինը և ուրիշներ:

**2. Հասարակական գիտությունները**

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից առաջ ղազախ ժողովուրդը գտնվում էր տնտ. և կուլտուրական ցածր մակարդակում: Մինչև գրավոր խոսքի ստեղծվելը ժողովրդի լավագույն իղձերն արտահայտվել են բանավոր ստեղծագործության մեջ: Նախապետական-ֆեոդալական Ղ-ում տիրապետողը կրոնական գաղափարախոսությունն էր, որը մահմեդականության և շամանության միացումն էր:

Ղ-ի միացումը Ռուսաստանին վերացրեց տնտեսության դարավոր մեկուսացվածությունը, նպաստեց տնտեսության և մշակույթի զարգացմանը, հակաֆեոդալական լուսավորականության վերելքին: Ղազախ լուսավորիչներ Չ. Վալիխանովը, Ի. Ալթինսարինը, Աբայ Կունանբաևը հանդես են եկել շահագործման և անիրավահավասարության դեմ, մերկացրել կեղեքողներին, քննադատել ցարիզմի գաղութային քաղաքականությունը, պայքարել ժողովուրդների միջև բարեկամության հաստատման համար: 1905—07-ի հեղափոխությունը, կապիտալիզմի զարգացումը և հակասությունների սրումը Ղ-ում պայմանավորեցին գաղափարական զանազան հոսանքների (կրոնամիստիկական, պահպանողական-բուրժուական, առաջադիմական-բուրժուական, դեմոկրատական են) առաջացումը: Ղ-ի պատմության, մշակույթի ուսումնասիրման գործում մեծ ներդրում ունեն ռուս գիտնականները:

XX դ. սկզբին տարածվել է մարքսիստական գրականությունը: Ղ. են թափանցել բոլշևիկյան «Իսկրա», «Զվեզդա», «Պրավդա» թերթերը, ուր թղթակցություններ էին տպագրվում ղազախական բանվորների կյանքի և պայքարի մասին: ՌՍԴԲԿ տեղական խմբերն ու կազմակերպությունները հրատարակում և տարածում էին հեղափոխական թռուցիկներ:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը նպաստեց Ղ-ում մարքսիզմի հաստատմանը: Սովետական իշխանության առաջին տարիներին գաղափարական պայքարը հիմնականում տարվում էր սոցիալիզմի կառուցման խնդրի շուրջը: Բուրժ. նացիոնալիստները առաջ էին քաշում Ղ-ում ինքնաբերաբար կոմունիզմին

անցնելու գաղափարը, որի նպատակն էր պահպանել ղազախական բայությունը: Ղ-ի բոլշևիկները, ղեկավարվելով լենինյան դրույթներով, մերկացրին այդ ազգայնական «տեսությունները», աշխատավորներին նախապատրաստեցին սոցիալական արմատական տեղաշարժերին, գյուղատնտեսության կոլեկտիվացմանը: Գաղափարական պայքարում վճռական դեր կատարեցին կոմունիստական կուսակցության որոշումները, կուսակցական և սովետական մամուլը:

1931-ին ստեղծվել է մարքսիզմ-լենինիզմի Ղազախ. ԳՀԻ (1940-ից՝ կուսակցության պատմության ինստ.), որն աշխատանք է տարել մարքսիստական դիրքերից լուսաբանելու Ղ-ում սոցիալիզմի շինարարության հարցերը: 1931-ից Ղ-ի բուհերում ղազախերեն սկսել է դասավանդվել մարքսիստական փիլիսոփայության դասընթացը: Թարգմանվել են Վ. Ի. Լենինի, Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի աշխատությունները: 1934-ին ստեղծվեց Ազգային մշակույթի Ղազախական ԳՀԻ, որի պատմահնագիտական բաժինը դարձավ ՍՍՀՄ ԳԱ ղազախական մասնաճյուղի (1938) հիմքը. 1943-ին հրատարակվեց «Ղազախական ՍՍՀ պատմությունը (հնագույն ժամանակներից մինչև մեր օրերը)» ընդհանրացնող աշխատությունը: Այդ տարիներին ստեղծվեց Ղազախական ՍՍՀ ԳԱ պատմության, հնագիտության և ազգագրության ինստ-ը:

Հասարակական գիտությունների բուռն վերելքը Ղ-ում սկսվել է ետպատերազմյան տարիներին: Ղազախական ՍՍՀ ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստ-ում (1958) և բուհերի փիլ. ամբիոններում հետազոտվում են պատմական մատերիալիզմի (Բ. Ամանտաև, Ն. Ջանգիլդին, Դ. Կշիբեկով, Ն. Սարսենբաև և ուրիշներ), դիալեկտիկական մատերիալիզմի և բնագիտության փիլ. հարցերի (Ա. Կասըմժանով, Ժ. Աբդիլդին, Մ. Չեչին) պրոբլեմները, հասարակական և փիլ. մտքի զարգացման պատմությունը (Կ. Բեյսեմբիև), անցյալի մշակութային ժառանգությունը:

Ղազախ պատմաբաններն ուսումնասիրում են Ղ-ի պատմության բոլոր ժամանակաշրջաններն ու խնդիրները: Ղ-ի տարածքում ամենուրեք կատարվել են հնագիտական պեղումներ: Ստեղծվել է Ղ-ի հնագիտական քարտեզ: Պեղումների նյութերի հիման վրա ստեղծվել և հրատարակվել է «Կենտրոնական Ղազախստանի հին մշակույթը» (1966) աշխատությունը: Ղազախական պատմագրության մեջ կարևոր ներդրում էր «Ղազախստանի կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծեր»-ը (1963): Թարգմանվել են Վ. Ի Լենինի երկերը (4-րդ հրտ.): Հրատարակվել են «Վ. Ի. Լենինը Միջին Ասիայի և Ղազախստանի մասին» (1960) ժողովածուն և Ս. Բեյսեմբաևի «Լենինը և ղազախները» (1968) մենագրությունը: Ծավալվել է փաստագրական նյութերի հրապարակումը [լույս են տեսել Ղ-ի պատմության (XVI դ. մինչև Հայրենական մեծ պատերազմը) վերաբերյալ թեմատիկ ժողովածուներ]: Ղազախ պատմաբանները ուսումնասիրում են Ղ-ում բանվոր դասակարգի ձևավորման, սոցիալիստական շինարարության, ազգային պետականության և սովետական շինարարության, ազգային հարցի լուծման, ղազախական մշակույթի զարգացման խնդիրները, ինչպես նաև Ղ-ի հին և միջին դարերի, ղազախների ծագման, Ռուսաստանի հետ միավորման պատմությունը ևն: Հրատարակվել են գրքեր Ղ-ի քաղաքների վերաբերյալ:

Ղազախական ՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստ-ը (1952), գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման ինստ-ը (1931), Ալմա Աթայի ժողտնտեսության ինստ-ը և այլ բուհերի տնտեսագիտական ամբիոնները մասնակցում են ժողտնտեսության պլանների կազմմանը, մշակում տնտեսության զարգացման արդիական պրոբլեմները: Ղ-ի տնտեսագետները տեսական հետազոտություն են կատարում քաղաքատնտեսության, տնտեսագիտական մտքի պատմության, էկոնոմիկայի, ժողտնտեսության կազմակերպման ու պլանավորման և այլ բնագավառներում:

Իրավագիտությունը Ղ-ում զարգանում է 1950-ական թթ.: Մշակվում են սովետական ազգային պետականության տեսության և պատմության, սոցիալիստական իրավունքի և պետ. շինարարության հարցեր: Հրատարակվել են բազմաթիվ մենագրություններ և բազմահատորյակներ: Մեծ ուշադրություն է դարձվում գյուղատնտ. (ագրարային) իրավունքի հետազոտություններին (Ա. Երենով, Կ. Շայբեկով, Մ. Սաիպով և ուրիշներ): Իրավագիտական հետազոտությունները կենտրոնացած են փիլիսոփայության և իրավունքի ինստ-ում, դատական փորձաքննության ղազախական ինստ-ում (1957), ղազախական համալսարանի իրավաբանական ֆակուլտետում:

**3. Գիտական հիմնարկները**

Սովետական իշխանության տարիներին Ղ-ում ստեղծվել է գիտական հիմնարկների ճյուղավորված ցանց: Հանրապետությունում կա (1978) ավելի քան 200 գիտական հիմնարկ (ներառյալ բուհերը), աշխատում են ավելի քան 35 հզ. գիտաշխատող: Առաջատար գիտական կենտրոնը Ղազախական ՍՍՀ ԳԱ-ն է, որի կազմում կա 50 ակադեմիկոս և 72 թղթակից անդամ (1979): Ակադեմիան զարգացնում և ամրապնդում է ստեղծագործական կապերը ՍՍՀՄ-ի և արտասահմանյան երկրների գիտահետազոտական հիմնարկների հետ: Ինֆորմացիայի փոխանակությունը, համատեղ աշխատանքները, բարձրորակ կադրերի պատրաստումը իրականացվում են միջինասիական հանրապետությունների գիտությունների ակադեմիաների, ՍՍՀՄ ԳԱ Սիբիրի բաժանմունքի, Ուկր. ՍՍՀ ԳԱ-ի և մի շարք ճյուղային ինստ-ների համագործակցությամբ: Համատեղ աշխատանքներ են տարվում Չեխոսլովակիայի, Լեհաստանի, ԳԴՀ-ի, Մոնղոլիայի գիտնականների հետ: Գիտահետազոտական աշխատանքներ են կատարվում նաև բուհերում և մի շարք ճյուղային ԳՀԻ-ներում:

**XIII. Մամուլը, ռադիոհաղորդումները, հեռուստատեսությունը**

Ղ-ում գործում է հանրապետական 6 հրատարակչություն («Կազակստան», «Ժազուշի», «Կայնար», Ղազախական սովետական հանրագիտարանի խմբագրություն ևն), լույս են ընծայվում տարեկան ավելի քան 2 հզ. անուն գիրք և գրքույկ: Ղազախական առաջին թերթը՝ «Տուրկիստան ուալայատընըն գազետի» («Թուրքեստանյան երկրամասի թերթ»), լույս է տեսել 1870—82-ին, Տաշքենդում: Լույս են ընծայվում շուրջ 400 թերթ, 160 հանդես և պարբերական այլ հրատարակություններ: Հանրապետական թերթերից են՝ «Սոցիալիստիկ Կազակստան» («Սոցիալիստական Ղազախստան», 1919-ից), «Լենինշիլ ժաս» («Լենինյան երիտասարդություն», 1921-ից), «Կազակ ադեբիետի» («Ղազախական գրականություն», 1934-ից), «Կազակստան պիոների» («Ղազախստանի պիոներ», 1930-ից), «Կազախստանսկայա պրավդա» («Казахстанская правда», 1920-ից), «Լենինսկայա սմենա» («Ленинская смена», 1922-ից), «Ուչիտել Կազախստանա» («Учитель Казахстана», 1952-ից) ևն: Հանդեսներից են՝ «Կազակստան կոմունիստի» («Ղազախստանի կոմունիստ», 1921-ից), «Ժուլդըզ» («Աստղ», 1928-ից), «Կազակստան այելդերի» («Ղազախստանի կանայք», 1925-ից), «Պարտիյնայա ժիզն Կազախստանա» («Партийная жизнь Казахстана», 1930-ից), «Նարոդնոյե խոզյայստվո Կազախստանա» («Народное хозяйство Казахстана», 1926-ից) ևն: Ղազախստանի հեռագրական գործակալությունը (ՂազՀԳ) կազմակերպվել է 1921-ին:

Ռադիոհաղորդումները (1923-ից) և հեռուստահաղորդումները (1958-ից) տրվում են ղազախերեն, ռուս., կորեերեն, ույղուրերեն, գերմ., ուզբեկերեն:

**XIV. Գրականությունը**

Առավել հին հերոսական պոեմներում («Կոբլանդը», «Եր-Տարգըն», «Ալփամըս» ևն) երգվել են ժողովրդի անկախության համար մարտնչող դյուցազունների քաջագործությունները: Հայտնի են եղել նաև «Կոզի-Կորպեշ և Բայան-Սլու», «Կըզժիբեկ» քնարա-էպիկական պոեմները: XVI դ. հայտնի են *ակինններ* Ասան-Կայգըն, Դոսպամբետը, Շալկիիզը: Ժողովրդականություն է վայելել Բուքարա-Ժըրաու Կալկամանովը (1693—1787, այլ աղբյուրներով՝ 1686—1799): XVIII—XIX դդ. սահմանագծում ղազախական մշակույթի զարգացման նոր փուլ սկսվեց՝ կապված Ղ-ի մեծ մասի Ռուսաստանին միանալու հետ: XIX դ. 2-րդ կեսին ակիններ Բիրժան Կոժագուլովը (1834—97), Ասետ Նայմանբաևը (1862—1924), բանաստեղծուհի Սառա Տաստանբեկովան, *Ջամբուլ Ջաբաևը* (1846—1945) և ուրիշներ զարգացրին այտըսը (ժող. երգիչների մրցույթներ)՝ ոչ միայն որպես բանաստեղծական մրցության ձև, այլև ճնշման դեմ ուղղված, արդարությունը պաշտպանող հասարակական կարծիքն արտահայտելու միջոց: XIX դ. կեսերին առաջացավ ղազախական լուսավորականությունը, որի ներկայացուցիչներից են ազգագրագետ ու բանահավաք Չոկան Վալիխանովը (1835—1865), գրող Իբրայ Ալթընսարինը (1841—89), որը ռուս. գրի հիմքի վրա մշակել է ղազախական այբուբենը, բանաստեղծ դեմոկրատ *Աբայ Կունանբաևը* (1845—1904)՝ ղազախական

գրավոր ռեալիստական գրականության հիմնադիրը: Նրա ավանդույթները XX դ. սկզբին շարունակել են Սուլթանմահմուտ Տորայղըրովը (1893—1920), Սաբիթ Դոնենտաևը (1894—1933), Սպանդիյար Կուբեևը (1878—1956) և ուրիշներ: Ղազախական սովետական գրականության սոցիալիստական ռեալիզմի հիմնադիրներն են բանաստեղծ հեղափոխական Սակեն Սեյֆուլլինը (1894—1939), բանաստեղծներ Բայմագամբետ Իզտոլինը (1899—1921), Իլիաս Ջանսուգուրովը (1894—1937), արձակագիրներ Բեիմբետ Մայլինը (1894—1939), Մուխթար *Աուեզովը* (1897—1961), Սաբիթ Մուքանովը (1900—1973): 1920-ական թթ. կեսերին ղազախական գրականությունը համալրվեց բանաստեղծներ Ի. Բայզակովի (1900—46), Ա. Թոք մագամբետովի (ծն. 1905), Կ. Աբդուքադիրովի (1903—64), Թ. Ժարոկովի (1908—1965), արձակագիրներ Գ. Մուսրեպովի (ծն. 1902), Գ. Մուսրեպովի (ծն. 1902) և ուրիշների անուններով: Այդ շրջանում ղազախական գրականությունը դարձավ սոցիալիստական շինարարության պաթոսն արտացոլող բազմաժանր գրականություն:

1941—45-ի Հայրենական մեծ պատերազմի տարիներին ղազախական, ինչպես և ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների գրականությունն արտացոլեց սովետական ժողովրդի մարտական ու աշխատանքային սխրանքները: Ետպատերազմյան շրջանում ղազախական գրականությունը շարունակեց պատերազմի հետ կապված թեմատիկան: Երևան եկան պատմահեղափոխական և ժամանակակից թեմայով ստեղծագործություններ: 1956-ին Աուեզովն ավարտեց «Աբայի ուղին» («Աբայ», հ. 1—2, հայ. հրտ. 1952) քառերգությունը, որը նշանակալից երևույթ եղավ ոչ միայն ղազախական գրականության մեջ: Ետպատերազմյան տասնամյակների պոեզիայում հատկապես զարգացել են էպիկական ձևերը՝ քնարական ու սյուժետային պոեմը, չափածո վեպը: Գրվել են պատմական թեմաներով պոեմներ (Խ. Բեկհոժին, ծն. 1913, Գ. Կաիրբեկով, ծն. 1928 և ուրիշներ): Սովետական մարդկանց ներաշխարհի, ստեղծագործ աշխատանքի մասին պոեմներ են գրել Ա. Թաժիբաևը (ծն. 1909), Ժարոկովը և ուրիշներ: Սոցիալական և բարոյա-էթիկական բարդ կոնֆլիկտներ են արտացոլել դրամատուրգները (Շ. Հուսեյնով, 1906—72, Ա. Աբիշև, ծն. 1907 և ուրիշներ): Գրվել են նաև պատմական և պատմահեղափոխական թեմաներով պիեսներ (Մուքանով, Մ. Ախինժանով, ծն. 1905, Զ. Ակիշև, ծն. 1911 և ուրիշներ): 1960-ական թվականներից զարգանում է նաև գիտաֆանտաստիկ գրականությունը (Մ. Սարսեկեև, ծն. 1936, Շ. Ալիմբաև, ծն. 1941): 1960-ական թթ. գրականություն են մտել մի խումբ երիտասարդ արձակագիրներ (Ա. Նուրպեյիսով, ծն. 1922, Մ. Սունդետով, ծն. 1936, Ա. Կեկիլբաև, ծն. 1939) ու բանաստեղծներ (Կ. Մուրզալիև, ծն. 1935, Թ. Մոլդագալիև, ծն. 1935, Ս. Ժիենբաև, ծն. 1934):

Զարգանում են հայ-ղազախական գրական կապերը: Հայերեն են թարգմանվել Մ. Աուեզովի, Ա. Ալիմժանովի, Ա. Կունանբաևի, Ս. Մուքանովի, Գ. Մուսրեպովի, Ի. Ջանսուգուրովի, Ս. Սեյֆուլլինի, Գ. Օրմանովի, Հ. Երգալիևի և ուրիշների մի շարք գործեր: Ղազախերեն են թարգմանվել Խ. Աբովյանի, Շիրվանզադեի, Հ. Հակոբյանի, Վ. Անանյանի, Գ. Աբովի, Գ. Սարյանի, Ն. Զարյանի, Ս. Զորյանի, Ա. Իսահակյանի, Հ. Թումանյանի, Ե. Չարենցի, Ս. Կապուտիկյանի, Հ. Շիրազի, Գ. Էմինի և ուրիշների ստեղծագործություններից: 1968-ին ղազախերեն լույս է տեսել «Հայկական սովետական պոեզիայի անթոլոգիա»-ն:

**XV. Ճարտարապետությունը և կերպարվեստը**

**Ճարտարապետությունը:** Ղ-ի տարածքում պահպանվել են բրոնզի դարի հուշարձաններ: Այդ ժամանակաշրջանի բնակավայրերը կազմված էին հատակագծում ուղղանկյուն, կիսագետնափոր 10—40 տներից և տնտ. շինություններից: Պահպանվել են պաշտամունքային կառույցներ՝ դոլմեններ, մենհիրներ, ինչպես նաև դամբարանաբլուրներ: Մ. թ. ա. I հազարամյակում — մ. թ. 1-ին դդ. Ղ-ի տարածքում ապրող ցեղախմբերն ունեցել են ինչպես շարժական կացարաններ (թաղիքե յուրդեր), այնպես էլ ամրակայված (կավ, հում աղյուս) տներ (Չիրիկռաբատ, մ. թ. ա. V—II դդ.): Այս շրջանի գմբեթավոր գերեզմանոցային կառույցներից նշանավոր է Բալանդի (Կզըլ Օրդայի մարզ) համալիրում հայտնաբերվածը (մ. թ. ա. IV—II դդ.): VIII դարից, մահմեդականության տարածմանը զուգընթաց, կառուցվել են մզկիթներ, մինարեթներ, սարդաբաներ, բաղնիքներ, քարվանսարաններ, դամբարաններ, երևան են եկել ճարտարապետական-շինարարական նոր մեթոդներ (կիրառվել են թրծած աղյուս, կամարագմբեթային կառուցվածքներ, փորագիր թրծակավով երեսպատում են): X—XII դդ. Ղ-ի տարածքի հվ-ում ստեղծվել են եռամաս կառուցվածքով քաղաքներ՝ միջնաբերդ, «շահրիստան» (քաղաքի թաղամասեր) և «ռաբատ» (արվարձան): X դ. սկսած կազմավորվել է դամբարանի կենտրոնակազմ գմբեթավոր տիպը (Բաբաջի-խաթունի, X—XI դդ., Այշա-Բիբիի, XII դ., դամբարանները), իսկ հետագայում նաև շքամուտքով գմբեթավոր տիպը (Սըրլը-տամ, XI—XII դդ.): XIV—XVI դդ. տնտ. և մշակութային վերելք են ապրել քաղաքները (Սըղնակ, Թարազ, Սայրամ են), կառուցվել են մոնումենտալ շինություններ (Ալաշա խանի, XIII դ. 2-րդ կես, Խոջա Ահմեդ Յասավիի, XIV դ. վերջ, դամբարանները): XIX դ. 60-ական թթ. Ռուսաստանին միանալուց հետո Ղ-ի շինարարությունը նոր թափ է ստացել, կառուցվել են ռձով էկլեկտիկ վարչական և առևտրական շենքեր, երկաթուղային կայարաններ, մզկիթներ, մինարեթներ, դամբարաններ (Ժուզդենի, XIX դ. 1-ին կես, Տորո Կարայի, XIX դ. 40-ական թթ):

Սովետական շրջանում, վերանորոգմանվերակառուցման աշխատանքներին զուգընթաց, սկսվել է բնակելի ու հասարակական նոր շենքերի շինարարությունը (Կզըլ Օրդա, Չիմքենդ են քաղաքներում): Կառուցվել են նոր քաղաքներ՝ Բալխաշ, Կարագանդա, Ռիդդեր (այժմ՝ Լենինոգորսկ) են: 1920—30-ական թթ. կառուցվել են սովետական կոնստրուկտիվիզմի ոգով շենքեր (Կառավարական տունը, այժմ՝ Ալմա Աթայի համալսարանի շենքը): 1930—40-ական թթ. ճարտ-յանը բնորոշ է օրդերային ձևերի օգտագործումը՝ համադրված ազգային ճարտ. ավանդական տարրերին (Ալմա Աթայի բժշկ. ինստ-ի, Ղազախական օպերայի և բալետի թատրոնի շենքերը): 1960-ական թթ. լայն թափ է ստացել բնակելի շինարարությունը. Ալմա Աթայում, Կարագանդայում, Ցելինոգրադում և այլ քաղաքներում կառուցվել են խոշոր բնակելի շրջաններ: Ալմա Աթայի մոտ կառուցվել է Մեդեո ստադիոնը (1972):

**Կերպարվեստը:** Ղ-ի տարածքում հայտնաբերված հնագույն հուշարձանները պալեոլիթի և նեոլիթի դարաշրջանին վերաբերող ժայռապատկերներն են: Բրոնզի դարից պահպանվել են կենդանիների տոտեմական քանդակներ, որսի տեսարաններով ժայռապատկերներ, երկրաչափական զարդանախշերով կավե սափորներ: Սկյութների մշակույթին կապված սակերի արվեստն առանձնանում է «կենդանական ոճին» բնորոշ իրական և ֆանտաստիկ կենդանիների պատկերումով: Միջնադարյան (VII—XVII դդ.) կերպարվեստը ներկայանում է տղամարդկանց, կանանց և կենդանիների քարե քանդակներով, կանանց բրոնզե արձանիկներով: Այս շրջանից հայտնի են դեկորատիվ-կիրառական արվեստի նմուշներ (յուրդի ձևով կավե սափորներ, չջնարակված զարդանախշ և ջնարակված զունազարդ խեցեղեն, ինքնատիպ նախշազարդերով կաշվե, մետաղե իրեր են): Յուրդի ինտերիերի հարդարանքում մեծ տեղ են գրավել նախշազարդ թաղիքե գորգերը (թեքեմետներ, սըրմակներ են): Տարածված էր ասեղնագործությունը, փայտի փորագրությունը, կաշվի մշակումը, ոսկերչությունը: XIX դ. ստեղծվում են ղազախ ժողովրդի կյանքն արտացոլող կերպարվեստի ստեղծագործություններ (Չ. Վալիխանով, Տ. Գ. Շևչենկո,



Խեցեղեն սկահակ (1930-ական թթ., Խեցեգործական գործարանի թանգարան, Ալմա Աթա)

Վ. Վ. Վերեշչագին և ուրիշներ): Սովետական կարգերի հաստատումից հետո՝ արդեն 1920-ական թթ. վերջին և 30-ական թթ. ռուս նկարիչների համագործակցությամբ ստեղծագործում էին ազգային շատ գեղանկարիչներ և գրաֆիկներ (Ա. Տաշբաև, Խ. և Կ. Խոջիկովներ, Ա. Իսմայիլով, Ա. Կաստեև և ուրիշներ), որոնք փորձում էին յուրացնել հաստոցային գեղանկարչությունը և գրաֆիկան, մշակել ազգային

գեղարվեստական լեզու: Հայրենական մեծ պատերազմի տարիներին ստեղծվեցին մարտանկարներ, պատմական թեմաներով կտավներ, պլակատներ և ծաղրանկարներ, 1940-ական թթ. կեսին — 50-ական թթ. 1-ին կեսին՝ սյուժետային նկարներ, դիմանկարներ և բնանկարներ (Ա. Մ. Չերկասկի, Մ. Ս. Լիզոգուբ, Լ. Պ. Լեոնտև և ուրիշներ): 1950-ական թթ. 2-րդ կեսին Ղ-ի կերպարվեստի զարգացման գործում մեծ դեր խաղացին Մոսկվայում, Լենինգրադում և այլ քաղաքներում գեղարվեստական կրթություն ստացած ղազախ երիտասարդ արվեստագետները: 1960—70-ական թթ. նրանց ստեղծագործությանը բնորոշ է մարդու ներաշխարհի, միջավայրի հետ նրա կապի արտահայտումը, որը և իր հետ բերեց գեղարվեստական նոր արտահայտչաձևերի որոնումներ: Այդ շրջանի գեղանկարիչներից են Մ. Ս. Կենբաևը, Կ. Տ. Տելժանովը, Ա. Մ. Ստեպանովը, Ս. Ա. Այտբաևը, գրաֆիկներից՝ Ն. Ս. Գաևը, Ռ. Սախին, Ի. Ե. Կվաչևոն, քանդակագործներից՝ Խ. Ի. Նաուրզբաևը, Բ. Ա. Տուլեկովը, Տ. Ս. Դոսմագամբետովը, բեմանկարիչներից՝ Վ. Վ. Տեյլյակովսկին, Ա. Ի. Նենաշևը, Գ. Մ. Իսմայիլովան: Դեկորատիվ-կիրառական արվեստի ներկայացուցիչներից են Օ. Կենեբաևը, Լ. Մ. Խոջիկովան, Ռ. Ս. Սարսենբիևը: 1940-ին Ալմա Աթայում հիմնադրվել է Ղ-ի նկարիչների միությունը:

**XVI. Երաժշտությունը**

Մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը ղազախական երաժըշտական մշակույթը ներկայանում էր միայն ժող. ստեղծագործությամբ (երգեր և գործիքային պիեսներ՝ կյույներ): Երաժըշտական մշակույթի հիմնական կրողներն էին *ակինները*: Ղազախական ժող. երաժշտական արվեստը բնութագրվում է ինքնատիպ ինտոնացիաներով, երգային և գործիքային զարգացած ձևերով, մեղեդային և ռիթմական բազմակերպ կառուցվածքներով: Կենցաղավարող ժող. գործիքներից են երկլարանի դոմբրան (կըսմիթավոր), երկլարանի կոբիզը (աղեղնավոր), սըբըզգըն (փողավոր, երկայնակի ֆլեյտայի տիպի), դաուըլպազը (հարվածային): XIX դ. կեսի — XX դ. սկզբի ժող. երաժիշտներից էին՝ դոմբրահարներ Կուրմանգազի Սագիրբաևը, Դաուլետկերեյ Շիգաևը, երգիչներ Բիրժան Կոժագուլովը, Մուխիտ Մերալիևը: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո նշանակալիորեն ակտիվացավ երաժըշտական-հասարակական կյանքը: Ձևավորվեցին ժող. երաժշտական ստեղծագործության նոր ժանրեր, երևան եկան խմբերգեցողությունը և ժող. գործիքներով անսամբլային կատարումը: 1934-ին ստեղծվեց Ղազախական ժող. գործիքների նվագախումբը (1944-ից՝ Կուրմանգազիի անվ.): 1935-ին բացվեց Ջամբուլի անվ. ֆիլհարմոնիան: 1933-ին Ալմա Աթայում հիմնադրվեց երաժշտական ստուդիա, որը 1934-ին վերակազմավորվեց Ղազախական ժող. թատրոնի (1936-ից՝ Ղազախական և ռուս. օպերայի միացյալ թատրոն, 1937-ից՝ Ղազախական օպերայի և բալետի թատրոն): 1934-ին բեմադրվեց ղազախական առաջին օպերան՝ Ե. Գ. Բրուսիլովսկու



Ա. Կ ա ս տ ե և. «Գնված հարսնացու» (1938, Ղազախստանի Տ. Գ. Շևչենկոյի անվան գեղարվեստի պատկերասրահ, Ալմա Աթա)



Ա. Գ. Շ կ ո յ ն ի. «Հավերժություն» եռանկարի «Հուշ» նկարը (1967)

Ե. Ա. Ռ ւ մ ի ս կ ո վ. «Ընտանիք» (1967)



«Կըզ-Ժիբեկ»-ը, գրվեցին առաջին ազգային բալետները, 1930—40-ական թթ.՝ մասսայական երգեր, ռոմանսներ, ստեղծվեց կամերագործիքային, սիմֆոնիկ և խմբերգային երաժշտություն: 1944-ին Ալմա Աթայում բացվեց կոնսերվատորիա (1963-ից՝ Կուրմանգազիի անվ. արվեստի ինստ.): Ետպատերազմյան շրջանի օպերաներից են՝ Բրուսիլովսկու և Մ. Տ. Տուլեբաևի «Ամանգելդի» (բեմ.՝ 1945, 2-րդ խմբ.՝ 1961), Տուլեբաևի «Բիրժան և Սառա» (բեմ.՝ 1946), Կ. Խ. Կուժամյարովի և Ն. Ա. Տլենդիևի «Ալթըն Թաուլար» («Ոսկե սարեր», 1960), Ե. Ռ. Ռախմադիևի «Կամար-Սուլու» («Գեղեցկուհի Կամարը», 1963), Ս. Մ. Մուխամեջանովի «Ժումբակ կըզ» («Խորհրդավոր աղջիկը», 1971), Գ. Ժուբանովայի «Ենլիկ և Քեբեկ» (1978), սիմֆոնիկ ժանրի երկերից՝ Վ. Վ. Վելիկանովի «Ղազախական սիմֆոնիան» (1947), Տուլեբաևի «Ղազախստան» պոեմը (1951), Բրուսիլովսկու 4-րդ, 5-րդ, 6-րդ և 7-րդ սիմֆոնիաները, Մուխամեջանովի «Փոթորիկ» սիմֆոնիան (1968), կանտատ-օրատորային ժանրի երկերից՝ Բրուսիլովսկու «Սովետական Ղազախստան» կանտատը, Գ. Ժուբանովայի «Լենինի խոսքը» (1978) օրատորիան, կամերագործիքային երաժշտական ստեղծագործություններից՝ Բրուսիլովսկու «Երգ կյանքի մասին» լարային կվարտետը, Վելիկանովի «Իմպրովիզացիա Աբայի հիշատակին» դաշնամուրի և ջութակի համար երկը ևն: Երաժըշտական արվեստի գործիչներից են երգիչներ Ռ. Մ. Աբդուլինը, Ռ. Տ. Բագլանովան, Ռ. Ու. Ջամանովան, Ե. Բ. Սերկեբաևը, Բ. Ա. Տուլեգենովան (ՍՍՀՄ ժող. արտիստներ), դոմբրահար Կ. Ժանտլեուովը, դիրիժորներ Գ. Ն. Դուգաշևը, Ֆ. Շ. Մանսուրովը: Ղ-ում գործում են նաև Ղազախական երգչախմբային կապելլան, Ղազախական ՍՍՀ երգի-պարի անսամբլը, սիմֆոնիկ և կամերային նվագախմբեր, «Գուլդեր» երիտասարդական էստրադային նվագախումբը, մի շարք մանկավարժական և կուլտուրայի ինստ-ներ՝ երաժըշտական բաժիններով, 11 երաժշտական ուսումնարան, 156 մանկական երաժշտական և գեղարվեստական դպրոցներ:

**XVII. Թատրոնը**

Ղազախական թատերարվեստի տարրեր պարունակել են հին ծիսակատարություններն ու խաղերը: 1905—07-ի հեղափոխությունից հետո երևան են եկել ազգային դրամատուրգիայի առաջին ստեղծագործությունները: Օրենբուրգում, Օմսկում, Սեմիպալատինսկում, Տաշքենդում տրվել են սիրողական ներկայացումներ: Ազգային թատրոնի արագ զարգացումն սկսվել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո: 1922-ին Օրենբուրգի Ղազախական ժողկրթության ինստ-ին կից ստեղծվել է առաջին մշտական թատերական խմբակը: 1926-ին Կզըլ Օրդայում բացվել է ղազախական առաջին թատրոնը (1928-ին տեղափոխվել է Ալմա Աթա, այժմ՝ Ղազախական դրամայի թատրոն): 1930-ական թթ. ռուս. թատերական մշակույթի և ազգային առաջադեմ ավանդույթների զուգակցումը նպաստել է դերասանի վարպետության կատարելագործմանը, բարձրացրել ներկայացման

կուլտուրան: Թատրոնի խաղացանկ են մտել Ն. Գոգոլի, Ն. Պոգոդինի, Կ. Տրենյովի պիեսները: Թատրոնի նվաճումներից են Աուեզովի «Գիշերային ճայթյուններ» (1935), Գ. Մուսրեպովի «Ամանգալդի» (1937) պիեսների բեմադրությունները: 1932-ին Ալմա Աթայում ստեղծվել է դպրոց, ուր կրթվել են դերասաններ, երգիչներ, երաժիշտներ: Զարգացել են շրջանային թատրոնները: Մի շարք քաղաքներում բացվել են ղազախական և ռուս. մարզային թատրոններ: Հայրենական մեծ պատերազմի տարիներին ստեղծվել և բեմադրվել են պատերազմական թեմաներով պիեսներ (Աբիշևի «Կայծակ», 1941), ինչպես և պատմաբանահյուսական ներկայացումներ (Հուսանովի «Ալդար-Կոսե», 1942 ևն): 1944-ին Ալմա Աթայում ստեղծվել է մանուկների և պատանիների թատրոն (ռուս. խումբն աշխատում է 1945-ից, ղազախականը՝ 1948-ից): 1960-ական թթ. բեմադրություններից են՝ «Մայրական դաշտ» (ըստ Այթմատովի, 1964), Ն. Հիքմեթի «Բոլորից մոռացված» (1967), Վիշնևսկու «Լավատեսական ողբերգություն» (1967), Կ. Իսակովի «Առավոտյան արձագանք» (1977) ևն: 1979-ին գործել է 29 թատրոն (7 հանրապետական, 22 մարզային, որից 9-ը՝ ղազախական, 1-ը՝ ույղուրական, 1-ը՝ կորեական): Ղազախական դրամայի թատրոնում մեծ ներդրում ունեն ՍՍՀՄ ժող. արտիստներ Շ. Այմանովը, Կ. Կուանըշպաևը, Ղազախական ՍՍՀ ժող. արտիստներ Ռ. Կոյչուբաևան, Մ. Նասոնովը և ուրիշներ: Թատերական գործիչներից են ՍՍՀՄ ժող. արտիստներ Խ. Բուկեևան, Ս. Մայկանովան, Ղազախական ՍՍՀ ժող. արտիստներ Կ. Բադիրովը, Շ. Ջանդարբեկովան, Ն. Ժանտուրինը և ուրիշներ:

**XVIII. Կինո**

1928-ին Ալմա Աթայում ստեղծվել է «Արևելք-ֆիլմ» տրեստի բաժին, որը թողարկում էր «Վերջին լուրեր» պարբերական կինոժուռնալը և կինոակնարկներ: 1934-ին կազմակերպվել է կինոխրոնիկայի ստուդիա, որը թողարկում էր փաստավավերագրական ֆիլմեր և «Սովետական Ղազախստան» շաբաթական կինոժուռնալը: «Ամանգալդի» (1939, ռեժիսոր՝ Մ. Լևին) ֆիլմի ստեղծումը նշանավորեց ղազախական կինոյի ստեղծումը: Ալմա Աթայի գեղարվեստական ֆիլմերի կինոստուդիան (ստեղծվել է 1941-ին) 1942-ին միավորվել է «Մոսֆիլմ» ու «Լենֆիլմ» էվակուացված կինոստուդիաներին և աշխատել Կենտրոնական միացյալ կինոստուդիա անվամբ: Ղազախ երիտասարդ կինեմատոգրաֆիստների և սովետական կինոյի նշանավոր գործիչներ Ս. Էյզենշտեյնի, Վ. Պուդովկինի, Ի. Պիրևի, Ֆ. Էրմլերի և այլոց համատեղ աշխատանքը նպաստել է ազգային կադրերի աճին, ղազախ ժողովրդի կյանքին նվիրված ֆիլմերի ստեղծմանը («Աբայի երգերը», 1946, ևն): «Մոսֆիլմ»-ի և «Լենֆիլմ»-ի վերաէվակուացումից (1944) հետո Ալմա Աթայում մնացած ստուդիան միացել է տեղի կինոխրոնիկայի ստուդիային և 1960-ից կոչվել «Ղազախֆիլմ»: 1950—70-ական թթ. ստեղծվել են պատմական, պատմահեղափոխական, Հայրենական մեծ պատերազմին, ղազախ նշանավոր գործիչներին նվիրված, արդի և այլ թեմաներով գեղարվեստական ու փաստավավերագրական ֆիլմեր. լավագույններից են «Ջամբուլ» (1953, ռեժիսոր՝ Ե. Ձիգան), «Ջիգիթ աղջիկը» (1955, ռեժիսոր՝ Պ. Բոգոլյուբով), «Մեր քաղաքում» (1957, ռեժիսոր՝ Օ. Աբիշև), «Նրա ժամանակը կգա» (1958, ռեժիսոր՝ Մ. Բեգալին), «Տազնապալից առավոտը» (1966, ռեժիսոր՝ Ա. Կարսակբաև), «Երգ Մանշուկի մասին» (1970, ռեժիսոր՝ Բեգալին), «Իրտիշ—Կարագանդա» (1970, ռեժիսոր՝ Գ. Եմելյանով): 1978-ի երևանյան համամիութենական կինոփառատոնում մրցանակ է շահել «Տրանսսիբիրյան ճեպընթաց» ֆիլմը (1977, ռեժիսոր՝ Է. Ուրազբաև): Ղազախական կինոյում աշխատում են ռեժիսորներ Շ. Բեյսեմբաևը, Ժ. Բայտենովը, Մ. Դուլեպովը, Օ. Զեկկին, դերասաններ Ն. Ժանտուրինը, Կ. Կոժաբեկովը, Ա. Ումուրզակովան, օպերատորներ Ա. Աշրապովը, Ֆ. Աբսալյամովը, Մ. Բերկովիչը և ուրիշներ: 1979-ին Ղ-ում կար 10500 կինոկայանք:

Պատկերազարդումը տես 6-րդ հատորի 704—705-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակներ XXV—XXVI:

*Գրկ.* Ленин В.И., О Средней Азии и Казахстане, Ташкент, 1960; Բաղդասարյան Ա.Բ., Վալեսյան Լ.Հ., Սովետական Ղազախստան, Ե., 1977: Նայզագարին Թ.Ա., Ղազախական ՍՍՀ էկոնոմիկայի և կուլտուրայի վերելքը, Ե., 1967: Кунаев Д. А., Советский Казахстан, М., 1978; Казахстан, М., 1969; Туркебаев Э., Двоскин Б., Исентаев К., Проблемы региональной экономики Казахстана, Алма-Ата, 1977; Народное хозяйство Казахстана в 1977 г., Алма-Ата, 1978; История Казахской ССР, [2 изд.], т. 1—2, Алма-Ата, 1957—63; Нусупбеков А.Н., Объединение казахских земель в Казахской Советской Социалистической Республике, Алма-Ата, 1953; Победа Советской власти в Средней Азии и Казахстане, Ташкент, 1967; Казахстан в Великой Отечественной войне. Очерки, в. 1, Алма-Ата, 1968; Покровский С.Н., Ленин и победа Советской власти в Казахстане, Алма-Ата, 1970; Очерки истории Коммунистической партии Казахстана, Алма-Ата, 1963; Джанибеков У., Комсомол—верный помощник и резерв партии, Алма-Ата, 1964; Сембаев А., История развития советской школы в Казахстане, Алма-Ата, 1962; Идейно-политические течения в Казахстане конца XIX— начала XX веков, Алма-Ата, 1961; История казахской литературы, т. 1—3, Алма-Ата, 1968—71; Маргулан А.Х., Басенов Т.К., Мендикулов М.М., Архитектура Казахстана, Алма-Ата, 1959; Изобразительное искусство Казахстана, отв. ред. Б. Г. Ерзакович, Алма-Ата, 1963; История музыки народов СССР, т. 1—3, М., 1970—72; История советского драматического театра, т. 1—6, М., 1966—71; Федулин А., Кино в Казахстане, Алма-Ата, 1967.

**ՂԱԶԱԽԱԿԱՆ ՍՊԻՏԱԿԱԳԼՈՒԽ ՏԱՎԱՐԻ ՑԵՂ**, մսատու ցեղերի առաջնեկը ՍՍՀՄ-ում: Ստացվել է Ղազախ. ՍՍՀ-ի, Օրենբուրգի և Վոլգոգրադի մարզերի տնտեսություններում՝ Ղազախստանի տեղական (մասամբ նաև կալմիկական) կովերի և հերեֆորդյան ցեղի ցուլերի տրամախաչումից: Նոր ցեղի կենդանիները ղազախ. տավարից ժառանգել են կոնստիտուցիայի ամրություն, հերեֆորդից՝ վաղահասություն և ունեն մսատուներին բնորոշ մարմնակազմ: Գույնը կարմիր է (տարբեր երանգներով), գլուխը, կուրծքը, որովայնը, վերջավորությունների ստորին մասը, պոչի ծայրը՝ սպիտակ: Լավ հարմարված են ՍՍՀՄ տափաստանային գոտու պայմաններին, հաջողությամբ կլիմայավարժվում են Ցակուտական ԻՍՍՀ-ում և Չինաստանի մարզում: Վաղահաս են. նորածին հորթերի կենդանի զանգվածը 20—25, 1,5 տարեկաններինը՝ 500, ցուլերինը՝ 850—1000, կովերինը 500—550 *կգ* է: Սպանդային ելքը մինչև 55% է: Մսեղիքում ճարպը տարածված է համաչափ, միսն ունի սննդի բարձր որակ: Կաթնատուների և սպիտակագլուխ ցեղի խառնացեղերը լավ բտվում են ու գիրանում: Ցեղը տարածված է Ղազախ. ՍՍՀ-ում, Օրենբուրգի, Վոլգոգրադի, Սարատովի մարզերում, Հարավային Ուրալում, Արևմտյան Սիբիրում, Հեռավոր Արևելքում ևն:

*Վ. Աբրահամյան*

**ՂԱԶԱԽԵՐԵՆ**, *ղազախների* լեզուն: Պատկանում է թյուրքական լեզվաընտանիքի ղփչաղյան խմբին: Խոսվում է Ղազախ. ՍՍՀ-ում, ինչպես նաև ՉԺՀ-ում, ՄԺՀ-ում և Աֆղանստանում: Խոսողների թիվը ՍՍՀՄ-ում՝ 5.166 (1979): Ժամանակակից Ղ-ում առկա է 3 բարբառ. հս-արլ., հվ. և արմ. (ժամանակակից գրական լեզվի հիմքում ընկած է հս-արլ. բարբառը): Հիմնական առանձնահատկություններից են Ղ-ի շ հնչյունի համապատասխանությունը համաթյուրքական չ-ին և ս հնչյունի համապատասխանությունը՝ շ-ին: Գրական Ղ. ձևավորվել է XIX դ. 2-րդ կեսին՝ ղազախ լուսավորիչներ Ա. Կունանբաևի և Ի. Ալթընսարինի ջանքերով: Այբուբենը՝ սկզբնական շրջանում արաբագիր, ապա՝ լատինագիր, 1940-ից՝ ռուսագիր (դիակրիտիկ նշանների գործածությամբ):

**ՂԱԶԱԽԵՑՅԱՆ** Վլադիմիր Նահապետի [ծն. 14.2.1926, Ղարաքիլիսա (այժմ՝ Կիրովական)], հայ սովետական պատմաբան: Պատմական գիտ. դ-ր (1977): ՍՄԿԿ անդամ 1945-ից: 1949-ին ավարտել է Երևանի համալսարանի պատմության ֆակուլտետը: 1959-ից՝ ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստ-ի ավագ գիտաշխատող: Ուսումնասիրությունները վերաբերում են Սովետական Հայաստանի գյուղացիության և Հայրենական մեծ պատերազմին հայ ժողովրդի մասնակցության պատմությանը: Մասնակցել է «Հայ ժողովրդի պատմություն» բազմահատորյակի VII—VIII հատորների պատրաստմանը:

*Երկ.* Սովետական Հայաստանը մեծ բեկման տարում, Ե., 1962: Միկոյանի անվան պարտիզանական ջոկատը, Ե., 1965: Սովետական Հայաստանի գյուղացիության պատմությունը 1920—1929 թթ., Ե., 1975: Հայաստանի կոլտնտեսային գյուղացիության պատմությունը (1929—1937 թթ.), Ե., 1978:

**ՂԱԶԱԽՆԵՐ**, ազգ, Ղազախական ՍՍՀ հիմնական բնակչությունը: Ընդհանուր թիվը ՍՍՀՄ-ում՝ 6.556 հզ. (1979), Ղազախ. ՍՍՀ-ում՝ 5.289 հզ.: Ապրում են նաև Ուզբեկ., Թուրքմեն., Կիրգիզ., Տաջիկ. ՍՍՀ-ներում և ՌՍՖՍՀ որոշ մարզերում: ՍՍՀՄ սահմաններից դուրս Ղ. բնակվում են ՉԺՀ-ում, ՄԺՀ-ում և Աֆղանստանում: Խոսում են *ղազախերեն*: Հավատացյալները սուննի դավանանքի մահմեդա-

կաններ են: Մ. թ. ա. III—II դդ. Հարավային Ղազախստանում առաջանում է ուսունների ցեղային միավորումը: VI—VII դդ. Ղազախստանի հվ-արլ. մասում ապրող ցեղերը Արևմտա-Թյուրքական խաքանության տիրապետության տակ էին: Հետագայում Ղազախստանի զանազան շրջաններում առաջանում են վաղ ֆեոդալական տիպի քաղ. կազմավորումներ. Թյուրգեշական (VIII դ.) և Կարլուկական (VIII—X դդ.) խաքանությունները, օղուզների (IX—XI դդ.), կիմակների և ղփչաղների (VIII—XI դդ.) միավորումները: Էթնիկական միաձուլմանը նպաստեց Կարախանյանների պետությունը (X—XII դդ.): XII դ. սկզբին Ղազախստանի տարածք են ներխուժում կիդանները, որոնք ի վերջո խառնվում են տեղի թյուրքալեզու բնակչությանը: XIII դ. Մոնղոլիայից և Ալթայից Ղազախստան են թափանցում նայմաններն ու կերեիտները: XV դ. կեսին Ոսկե հորդայի արլ. հատվածում առաջացան Նողայական հորդան և Ուզբեկական խանությունը, որոնցում միավորված էին ղփչաղների, արգինների, կարլուկների, նայմանների և այլ թյուրքալեզու ցեղեր: XV դ. վերջին—XVI դ. սկզբին կազմավորվեց ղազախ. ազգությունը՝ բաղկացած ցեղային երեք խմբավորումներից (ժուզ), որոնցից յուրաքանչյուրի մեջ մտնող ցեղերն առանձնանում էին տարածքով, բայց միմյանց հետ կապված էին տնտ. շահերի ընդհանրությամբ:

Մինչև ղազախ. հողերի Ռուսաստանին միացվելը (XIX դ. 60-ական թթ.) Ղ-ի հիմնական զբաղմունքը քոչվոր անասնապահությունն էր, մասամբ զբաղվում էին նաև տնային արհեստներով, ձկնորսությամբ, որսորդությամբ: Ղ-ի տնտեսության և մշակույթի մեջ արմատական փոփոխությունից հետո, երբ ձևավորվեց սոցիալիստական ղազախ. ազգը, Ղազախստանը դարձավ զարգացած արդ. և գյուղատնտ. երկիր: Փոխվեց Ղ-ի կենցաղն ու մշակույթը, նրանք անցան նստակեցության, վերացավ անգրագիտությունը: Տես նաև *Ղազախական Սովետական Սոցիալիստական Հանրապետություն*:

**ՂԱԶԱԽՍՏԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ** Ս. Մ. Կ ի ր ո վ ի ա ն վ., հիմնվել է 1934-ին, Ալմա Աթայում: Ունի մեխանիկա-մաթեմատիկական, ֆիզիկայի, քիմիայի, կենսաբանության, աշխարհագրական, իրավաբանական, պատմության, փիլիսոփայության, բանասիրական, ժուռնալիստիկայի, բուհերի դասախոսների որակավորման բարձրացման (2), երեկոյան և հեռակա (6) ֆակուլտետներ, ասպիրանտուրա, 77 ամբիոն, 12 պրոբլեմային լաբորատորիա, գրադարան (850 հզ. կտոր գիրք): 1977/78 ուս. տարում համալսարանն ունեցել է շուրջ 15 հզ. ուսանող, մոտ 1 հզ. դասախոս և գիտական աշխատող: Ղ. հ. հրատարակում է «Գիտական տեղեկագիր» (1938-ից) հանդեսը: Իր գոյության ընթացքում համալսարանը տվել է 25 հզ. մասնագետ: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով (1971):

**ՂԱԶԱՆՉԻ**, գյուղ Հայկական ՍՍՀ Ղուկասյանի շրջանում, շրջկենտրոնից 4 *կմ* հյուսիս-արևմուտք: Ղ-ով է անցնում Լենինական—Ախալքալաք խճուղին: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև հացահատիկի և կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կինո, կապի բաժանմունք, մանկապարտեզ, կենցաղսպասարկման տաղավար, բուժկայան: Գյուղում և շրջակայքում պահպանվել են «Քար խարաբա» գյուղատեղին, հին եկեղեցի և գերեզմանոցներ: Հիմնադրել են Բագրևանդի գավառի Իրից գյուղից եկածները, 1852-ին, Աշոցք բնակավայրի ավերակների տեղում:



Ղազանչի

**ՂԱԶԱՆՉԻ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտակերտի շրջանում, Խաչենագետի ձախ ափին, շրջկենտրոնից 31 *կմ* հարավ: Կոլտնտեսությունն զբաղվում է հացահատիկի մշակությամբ և անասնապահությամբ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, կինո, մանկապարտեզ, փոստի բաժանմունք: Ղ-ում պահպանվել է եկեղեցի (Ս. Գևորգ, XII դ.), շրջակայքում՝ Տիգրանակերտի ավերակները (մ. թ. ա. I դ.) և Նատարին բերդը (VI դ.):

**ՂԱԶԱՆՉՅԱՆ** Երվանդ Խաչատուրի (ծն. 2.6.1937, Երևան), հայ սովետական ռեժիսոր: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1974): ՍՄԿԿ անդամ 1962-ից: Ավարտել է Երևանի գեղարվեստա-թատերական ինստ-ի դերասանական (1958) և ռեժիսորական (1966) ֆակուլտետները, Լենինգրադի ռեժիսորական բարձրագույն դասընթացները (1968, ղեկավար՝ Գ. Ա. Տովստոնոգով): 1968-ից՝ Երևանի Սունդուկյանի անվ. թատրոնի ռեժիսոր, 1970-ից՝ Լենինականի դրամատիկական թատրոնի գլխավոր ռեժիսոր, 1977-ից՝ Երևանի դրամատիկական թատրոնի դիրեկտոր և գլխավոր ռեժիսոր, 1978-ից՝ Երևանի երաժշտական կոմեդիայի, 1980-ից՝ պատանի հանդիսատեսի թատրոնների գլխավոր ռեժիսոր: Լավագույն բեմադրություններից են՝ Դոստոևսկու «Ապուշը» (1967), Գ. Լորկայի «Բեռնարդա Ալբայի տունը» (1965), Ա. Չխեիձեի «Կամուրջ» (1971), Պոգոդինի «Հրացանավոր մարդը» (1974), Չարենցի «Երկիր Նաիրի» (1977, Ս. Ղազարյանի հետ):

Տեսարան «Ոճիր և պատիժ» պիեսի (ըստ Դոստոևսկու) ներկայացումից, ռեժ. Ե. Ղ ա զ ա ն չ յ ա ն (1972, Լենինականի դրամատիկական թատրոն)



**ՂԱԶԱՆՉՅԱՆ** Վռամ Խաչատուրի (15.8. 1897, Կարս—23.7.1941, Մոսկվա), Հայաստանում սովետական իշխանության հաստատման համար մղված պայքարի ակտիվ մասնակից: Սովորել է Ներսիսյան դպրոցում (Թիֆլիս): ՍՄԿԿ անդամ 1917-ից: 1917—19-ին կուսակցական ընդհատակյա աշխատանք է տարել Հայաստանի ու Վրաստանի տարբեր շրջաններում, 1919—1920-ին՝ Կարսում, ուր եղել է ընդհատակյա կազմակերպության կազմակերպիչներից և Մայիսյան ապստամբության ղեկավարներից (Կարսի ռազմահեղափոխական կոմիտեի անդամ): Ապստամբության պարտությունից հետո՝ Ախալցխայի և Ախալքալաքի կուսկազմակերպությունների պատասխանատու կազմակերպիչ: Քաղ. աշխատող 11-րդ կարմիր բանակում և Հյուսիսային Կովկասում: Արևելքի ժողովուրդների համագումարի (1920) պատգամավոր: 11-րդ կարմիր բանակի կազմում, որպես ջոկատի հրամանատար, կռվել է Ղարաքիլիսայում (Կիրովական) սովետական կարգեր հաստատելու համար: Քաղաքացիական կռիվների ժամանակ Լոռիում և Ղամարլուի (Արտաշատ) ձակատում կազմակերպել է կարմիր ապըստամբ ջոկատներ: 1921—33-ին սովետական և տնտ. աշխատանք է տարել Հայաստանում, 1933-ից՝ Մոսկվայում: Մասնակցել է 1939—40-ի սովետա-ֆիննական պատերազմին: Զոհվել է Հայրենական մեծ պատերազմում:

**ՂԱԶԱՆՉՅԱՆ** Տիրան Տիգրանի (15.7. 1901, Թիֆլիս—21.2.1967, Երևան), հայ սովետական քիմիկոս: Քիմ. գիտ. դ-ր (1952), պրոֆեսոր (1953), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1963): ՍՄԿԿ անդամ 1947-ից: Ավարտել է Ներսիսյան դպրոցը (1921), Մոսկվայի համալսարանը (1936), ապա մինչև կյանքի վերջն աշխատել Երևանի համալսարանում (ասիստենտ, գիտ. քարտուղար, անօրգանական քիմիայի ամբիոնի վարիչ, պրոֆեսոր): Ղ. առաջինը Հայաստանում ստեղծել է ֆիզիկաքիմիական անալիզի լաբորատորիա: Միջնադարյան մատենագրական նյութերի հիման վրա քննարկել ու համակարգել է Հայաստանում քիմիայի ծագման և զարգացման պատմությունը: Հեղինակ է պատ-



Տ. Տ. Ղազանչյան

մա-բնափիլիսոփայության հարցերին նվիրված ուսումնասիրությունների, ինչպես նաև «Ջրածին» (1953), «Թթվածին» (1954), «Նյութի ատոմամոլեկուլյար կառուցվածքի մասին» (1956), «Ջրի կյանքը» (1957), «Ալյումինիում» (1959), «Պղինձ» (1961), «Սիլիցիումի աշխարհում» (1969) գիտահանրամատչելի գրքույկների: Պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով:

*Երկ.* Էլեմենտների ուսմունքը հայ բնափիլիսոփայության մեջ, Ե., 1946: Սահակ Ծաղկադար, Ե., 1956: Очерки по истории химии в Армении, Е., 1955.

**ՂԱԶԱՎԱԹ** (արաբ. ռազմերթ, ռազմարշավ), մինչիսլամական ժամանակաշրջանում՝ ցեղակայության և ավարի համար արաբական ցեղերի ռազմական գործողությունները միմյանց և հարևան երկրամասերի դեմ, իսլամի (տես *Մահմեդականություն*) առաջացումից հետո՝ հավատի տարածման համար մղվող «սրբազան պատերազմ» (*ջիհադ*): Մուհամմեդի օրոք Ղ-ի կամ «մաղազիների» հիմնական նպատակն էր բոլոր արաբներին համախմբել նորաստեղծ կրոնի դրոշի ներքո: Խալիֆայության կազմավորումից հետո Ղ. վերածվեց ուսմունքի, որն արդարացնում էր նվաճողական արշավանքները: Միջին դարերում Ղ. նպաստեց մահմեդական կրոնի հետագա տարածմանն ու ամրապնդմանը Ասիայում և Աֆրիկայում, նաև՝ օսմանյան սուլթանների զավթողական նվաճումների հաջողությանը: Նոր և նորագույն ժամանակներում Ղ. մի կողմից ծառայել է որպես ժող. զանգվածներին հակագաղութային պայքարի հանող միջոց (XIX դ. 20—60-ական թթ. Հյուսիսային Կովկասում, 1890-ական թթ. Սուդանում, XX դ. սկզբից Լիբիայում, 1920-ական թթ. Իրաքում, 1940-ական թթ. Օմանում ևն), մյուս կողմից՝ ֆեոդալա-բռնապետական վարչակարգերում դարձել է զենք ժող. և առաջին հերթին՝ ազգային-ազատագրական շարժումները (օրինակ, հայկ. ազատագրական շարժումները Թուրքիայում ևն) ճնշելու համար: Քաղաքացիական պատերազմի տարիներին Հյուսիսային Կովկասում մյուրիդականները (տես *Մյուրիդականություն*) և Միջին Ասիայում բասմաչները (տես *Բասմաչություն*) Ղ. օգտագործեցին սովետական իշխանության դեմ պայքարում:

*Գրկ.* Климович Л. И., Ислам, 2 изд., доп., М., 1965. *Ե. Նալչարյան*

**ՂԱԶԱՐ Ա ՋԱՀԿԵՑԻ**, Ճահկեցի (ծն. թ. անհտ.—1751), հայ կաթողիկոս 1738-ից: Աջակցել է Արևմտյան Հայաստանից մեծազանգված հայ գյուղացիությանը Երևանի և Նախիջևանի գավառներում բնակեցնելու գործին: Պարսկ. իշխանություններից հալածվել և 1748-ին աքսորվել է Սևանա կղզի: 1749-ին ազատվել և վերահաստատվել է կաթողիկոսական գահին: Կառուցել է Էջմիածնի վանքի վեհարանը և մի հյուրանոց: Երկասիրել է «Գիրք Աստուածաբանական որ կոչի Դրախտ ցանկալի» (1734)՝ նվիրված հայկ. դավանանքի պաշտպանությանը և «Գիրք Աղօթից որ կոչի Աստուածադէրս» (1744): Գրել է նաև տաղեր, որոնք մեծ մասամբ ամփոփված են իր «Գիրք Նորաբոյս որ կոչի Երգարան»-ում (1737):

**ՂԱԶԱՐ ԹՈԽԱԹՑԻ** [մոտ 1550-ական թթ., Թոխաթ (Եվդոկիա)—1610, Կամենից], հայ տաղասաց, գրիչ: 1602-ին Թոխաթի կոտորածից ազատվել և հաստատվել է Եազլովցա քաղաքում, ապա՝ Կամենիցում: Այստեղ մտերմացել է լեհահայ գաղութի հոգևոր առաջնորդ, արքեպիսկոպոս Կարապետ վարդապետի հետ, որին և նվիրել է «Գովասանք Կարապետ արքեպիսկոպոսի ի Թոխաթցի Ղազար եպիսկոպոսէ ասացեալ» ներբողը: Ղ. Թ-ու մյուս 3 գործերը կապվում են ծննդավայրի հետ: Դրանցից մեկում՝ «Գովասանք ի վերայ Թոխաթ քաղաքին» երկում, Թոխաթը համարվել է «փոքր Ստամբոլ»: Մնացած 2-ը ողբ են («Ողբ ի վերայ կոտորածին Թոխաթի» և «Ողբ ի վերայ սովոյն Թոխաթի»), որոնք պահպանված են եղել բանասեր Շավարշ Սահակյանի մոտ և ոչնչացվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Ղ. Թ. ընդօրինակել է ձեռագրեր:

*Գրկ.* Ակինյան Ն., Հինգ պանդուխտ տաղասացներ, Վնն., 1921, էջ 205—216: Խաչատրյան Պ. Մ., Հայ միջնադարյան պատմական ողբեր (ԺԴ—ԺԷ դդ.), Ե., 1969: Սահակյան Հ., Ուշ միջնադարի հայ բանաստեղծությունը (XVI—XVII դդ.), Ե., 1975:

*Ա. Դոլուխանյան*

**ՂԱԶԱՐ ՍԵԲԱՍՏԱՑԻ** (ծն. և մահ. թթ. անհտ.), XVII դարի 2-րդ կեսի հայ տաղասաց: Հայտնի է «Ծով աչք, ամ քանի նաջիս խոլորով» («Տաղ սիրոյ և ուրախութեան») սիրերգով, որը դասվում է հայ միջնադարյան քնարերգության ընտիր էջերի շարքը: Ղ. Ս. երգում է կնոջ գեղեցկությունը, կյանքի վայելքը: Ձեռագրերը վկայում են, որ այդ տաղը միջնադարում տարածված է եղել և հաճախ հարստացվել է նոր տներով: Գրել է նաև ուրիշ գործեր, որոնք, սակայն, մեզ չեն հասել: Վերջերս հայտնաբերվել է Ղ. Ս-ուն վերագրվող մի այլ բանաստեղծություն՝ «Նորին Ղազարու վասն սիրո ասացեալ»:

*Երկ.* Կոստանյանց Կ., Նոր ժող., պրակ 2, Թ., 1892, էջ 23—27, պրակ 3, Թ., 1896, էջ 53—56: Մարգարիտներ հայ քնարերգության, հ. 1, Ե., 1971, էջ 211—16:

*Գրկ.* Սահակյան Հ., Ուշ միջնադարի հայ բանաստեղծությունը (XVI—XVII դդ.), Ե., 1975:

*Ա. Դոլուխանյան*

**ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ** [մոտ 442, գ. Փարպի (այժմ՝ ՀՍՍՀ Աշտարակի շրջանում)—VI դ. սկիզբ], հայ պատմիչ: Մերձավոր կապ է ունեցել Մամիկոնյան նախարարական տան հետ: Ավարայրի ճակատամարտից հետո նրանց հետ տեղափոխվել է Ցուրտավ (Վրաստան): Նախնական կրթությունն ստացել է Աշուշա բդեշխի պալատում, խաղընկերոջ՝ ապագա մարզպան *Վահան Մամիկոնյանի* քեռու՝ Աղան Արծրունու վերահսկողությամբ: Մոտ 465—470-ին ուսանել է Բյուզանդիայում: Վերադառնալով՝ հաստատվել է Կամսարականների նախարարական տիրույթում՝ Շիրակում, զբաղվել ուսումնա-կրթական գործերով: 484—486-ին եղել է Սյունիքում: 486-ին մարզպան դարձած Վահան Մամիկոնյանը Ղ. Փ-ուն կանչել է Սյունիքից և նշանակել Վաղարշապատի վերակառուցված վանքի առաջնորդ: Ղ. Փ. բարեկարգել է վանքի շինությունները, ստեղծել մատենադարան, ձեռնամուխ եղել լուսավորչական աշխատանքի, որը նրա դեմ առաջ է բերել հետադեմ հոգևորականության թշնամությունը: Ստիպված հեռացել է (մոտ 490-ին) Ամիդ, որտեղ գրել է «Թուղթ առ Վահան Մամիկոնյան» ուղերձը: Հայոց մարզպանը ետ է կանչել Ղ. Փ-ուն և պատվիրել գրել հայոց պատմությունը: Ըստ ավանդության, թաղված է Փարպիի ձորում՝ Լազրևան գյուղի հվ. կողմում գտնվող ավերակ եկեղեցու մոտ (մի այլ տարբերակով՝ Մուշի Առաքելոց վանքում):

«Թուղթ առ Վահան Մամիկոնյան»-ը վավերական աղբյուր է V դ. 2-րդ կեսին հայոց եկեղեցում գոյություն ունեցող երկու թևերի անհաշտ պայքարի մասին, երբ Մեսրոպ Մաշտոցի և Սահակ Պարթևի մահից հետո հետադեմ կղերականությունը հալածանք էր սկսել առաջադեմ մտավորականության դեմ: «Թուղթ»-ն ունի փոքրիկ առաջաբան, որը Գ. Խալաթյանցի ենթադրությամբ գրել է Ղ. Փ-ու աշակերտներից մեկը:

Պատմական և գիտական առումով ավելի արժեքավոր է «Պատմություն Հայոց»-ը: Այն բաղկացած է առաջաբանից և 3 դրվագից: Առաջաբանում Ղ. Փ. հիշատակում է իր նախորդների՝ Ագաթանգեղոսի և Փավստոս Բուզանդի աշխատությունների համառոտ բովանդակությունը, արժեքավորում դրանք, նշում, որ գրավոր սկզբնաղբյուրներից բացի օգտագործել է նաև ականատեսների պատմածները՝ նախապես ստուգելով ու ճշտելով: Ղ. Փ. իր պատմությունն սկսել է 387-ի իրադարձություններից (Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև Հայաստանի առաջին բաժանումից)՝ շարունակելով Փավստոս Բուզանդին: Առաջին դրվագում մանրամասն շարադրված են Արշակ Գ-ի և Վռամշապուհի գահակալության տարիների քաղ. պատմությունը և Սասանյան Պարսկաստանի պառակտիչ ու դավադիր քաղաքականությունը մինչև Արշակունյաց թագավորական հարստության անկումը (428): Այն ավարտվում է Սահակ Պարթևի և Մեսրոպ Մաշտոցի մահվան (439, 440) հետ կապված դեպքերի նկարագրությամբ: Երկրորդ դրվագի նյութը *Վարդանանց պատերազմն* է, համընկնում է *Եղիշեի* «Վարդանի և Հայոց պատերազմի մասին» երկի ժամանակաշրջանին և շատ ընդհանրություններ ունի այդ երկի հետ: Երրորդ դրվագը, որպես սկզբնաղբյուր, ամենաարժեքավորն է, որովհետև Ղ. Փ. իր նկարագրած դեպքերի ականատեսն է: Այն ընդգրկում է 460—480-ական թթ. հայ-պարսկական փոխհարաբերությունների և հայերի 482—484-ի հակապարսկական ապստամբության պատմությունը: Ղ. Փ-ու հաղորդած տեղեկությունները անփոխարինելի աղբյուր են հայ ժողովրդի, ինչպես նաև վրաց ու աղվանից ժողովուրդների պատմության ուսումնասիրության համար:

Ղ. Փ-ու «Թուղթ»-ն ամբաստանագիր է ընդդեմ ժամանակի տգետ և նախանձոտ հոգևորականության, անհատի իրավունքների պաշտպանության փորձ, միջնադարյան ազատամտության կարևոր փաստաթուղթ: Ղ. Փ. հրաժարվում է աղանդավորների հետ կապերը խզելուց և նրանց քննադատելուց, քանի որ Քրիստոսը ուսուցանել է ուրիշին դատավոր չլինել: Նա գըտ-

նում է, որ պատմագրությունը պետք է ենթարկվի խոհեմության ու անկողմնակալության սկզբունքներին, հիմք ունենա ուղղափառ հավատը, և, պատմության բարոյական էությունն օգտագործելով, կատարի դաստիարակչական դեր: Ղ. Փ. գրում է բարոյական արժեքների, հոգևորականների առաքինության ու աշխարհիկների քաջության պատմությունը, որն ընթանում է պայքարի, հակադրությունների ու ելևէջների ձևով: Պատմությունը մի կողմից նախախնամության, մյուս կողմից՝ մարդկանց անձնիշխան գործունեության դրսևորումն է: Նա աշխարհիկ ֆեոդալների իշխանությունը սահմանափակում է տնտ., քաղ., եկեղեցունը՝ կրոնական գործունեությամբ: Ղեկավարը, ըստ Ղ. Փ-ու, չպետք է բացարձակացնի, գերագնահատի իր իշխանությունն ու հեղինակությունը, նրա և ղեկավարվողի միջև պետք է լինի որոշակի համապատասխանություն և հաղորդակցականություն:

«Թուղթ»-ն առաջին անգամ հրատարակել է Մ. Էմինը (1853): Աշխարհաբար է թարգմանել Մ. Նալբանդյանը (1868): «Պատմություն Հայոց»-ն առաջին անգամ հրատարակվել է 1793-ին, Վենետիկում (աշխարհաբար՝ 1895-ին, Ալեքսանդրապոլում): Ֆրանսերեն մասնակի հրատարակվել է 1843-ին, Գ. Գապարաճյանի, ամբողջությամբ՝ 1869-ին, Ս. Գանթարյանի (Կեսարյան) թարգմանությամբ:

*Երկ.* Պատմութիւն Հայոց եւ Թուղթ առ Վահան Մամիկոնեան, Տփղիս, 1904:

*Գրկ.* Խ ա լ ա թ յ ա ն ց Գ., Ղազար Փարպեցի եւ գործք նորին, Մ., 1883: Ա բ ե ղ յ ա ն Մ., Երկ., հ. 3, Ե., 1968: Խ ր լ ո պ յ ա ն Գ. Տ., Հայ սոցիալական իմաստասիրության պատմություն, Ե., 1978: Մ ե լ ի ք - Բ ա խ շ յ ա ն Ս. Տ., Հայոց պատմության աղբյուրագիտություն, Ե., 1979:

*Ս. Մելիք-Բախշյան*


Ա. Ա. Ղազարյան


Ա. Ս. Ղազարյան


Ա. Վ. Ղազարյան


Գ. Ս. Ղազարյան

**ՂԱԶԱՐՅԱՆ** Անդրանիկ Աբրահամի (ծն. 14.5.1904, Շուշի), սովետական բանակի գեներալ-մայոր (22.2.1943), Սովետական Միության հերոս (16.10.1943): ՍՄԿԿ անդամ 1927-ից: Ավարտել է Երևանի Ա. Մյասնիկյանի անվ. զինվորական դպրոցը, ապա ծառայել 76-րդ հայկ. դիվիզիայում, սկզբում՝ որպես դասակի, ապա՝ վաշտի հրամանատար, դիվիզիայի շտաբի բաժնի պետ, գնդի հրամանատար: 1938—39-ին աշխատել է Երևանի համալսարանում, որպես ռազմագիտության ամբիոնի վարիչ, ապա՝ ԲԳԿԲ պահեստի հրամկազմի Սարատովյան դասընթացներում, որպես դասախոս: Հայրենական մեծ պատերազմի ժամանակ նրա հրամանատարությամբ գործող հրաձգային գունդը, ապա հրաձգային բրիգադը, իսկ 1942-ի դեկտեմբերից՝ հրաձգային դիվիզիան 1942—43-ին մասնակցել են բազմաթիվ բնակավայրերի ազատագրմանը և՛ աչքի ընկել Կուրսկի աղեղում, ինչպես նաև Դեսնա և Դնեպր գետերի անցման ժամանակ մղված մարտերում: Դնեպրի գետանցման և նրա արմ. ափին ամուր հենակետ ստեղծելու ժամանակ ցուցաբերած խիզախության համար ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության հրամանագրով Ղ-ին շնորհվել է Սովետական Միության հերոսի կոչում: 1945-ի մարտին Ղ-ի գլխավորած 215-րդ դիվիզիան Բելոռուսական 3-րդ ռազմաճակատի զորքերի կազմում մասնակցել է Քյոնիգսբերգում (այժմ՝ Կալինինգրադ) կենտրոնացված ֆաշիստական զորքերի ոչնչացմանը: 1945-ի օգոստոսին Ղ. մասնակցել է Մանջուրիայի ազատագրմանը և նշանակվել սովետական հրամանատարության ներկայացուցիչ Հարավային Մանջուրիայում: Հայրենական մեծ պատերազմից հետո Ղ. ավարտել է Մ. Վ. Ֆրունզեի անվ. ռազմ. ակադեմիային կից հրամկազմի դասընթացները և աշխատել որպես միավորման հրամանատարի տեղակալ: 1955-ից Ղ. պահեստի գեներալ-մայոր է: Պարգևատրվել է Լենինի 2, Սուվորովի 2-րդ աստիճանի 3, Կարմիր դրոշի 5 ևն շքանշաններով:

**ՂԱԶԱՐՅԱՆ** Աշխարհբեկ Սարգսի [ծն. 12.5.1918, գ. Մարց (ՀՍՍՀ Թումանյանի շրջանում)], սերժանտ, Սովետական Միության հերոս (27.2.1945): ՍՄԿԿ անդամ 1943-ից: 1940-ին զորակոչվել է կարմիր բանակ: Ռազմաճակատ մեկնել է 1941-ի օգոստոսին՝ 301-րդ հրաձգային դիվիզիայի կազմում: Մասնակցել է Դոնեցկի, Օդեսայի, Դնեստրի, Բենդերիի, Վարշավայի, Օդերի գետանցման և Բեռլինի համար մղված մարտերին: 1945-ի հունվ. 14-ին նրան հանձնարարվել է իր ջոկատով ճեղքել Վարշավայի վոյեվոդության Չերվոնկա գյուղի շրջանում ամրացած թշնամու դասավորությունը և ճանապարհ բացել գնդի համար: Մարտական այդ առաջադրանքը կատարելիս ցուցաբերած բացառիկ խիզախության ու արիության համար ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության հրամանագրով նրան շնորհվել է Սովետական Միության հերոսի կոչում: Պարգևատրվել է Լենինի, Կարմիր աստղի, Փառքի III աստիճանի, Բոգդան Խմելնիցկու III աստիճանի շքանշաններով:

*Ե. Սահակյան*

**ՂԱԶԱՐՅԱՆ** Աշոտ Վաղարշակի (ծն. 11.7. 1921, գ. Չիֆթքիլիսե, Վրացական ՍՍՀ Ծալկայի շրջան), սովետական բանակի գեներալ-մայոր (29.4.1970), Սովետական Միության հերոս (24.3.1945): ՍՄԿԿ անդամ 1943-ից: 1939-ին զորակոչվել է կարմիր բանակ: 1939—40-ին մասնակցել է սովետա-ֆիննական պատերազմին, Հայրենական մեծ պատերազմի ժամանակ՝ Մերձբալթիկայի, Լենինգրադի ու Ռժևի պաշտպանական և Սմոլենսկի մարզի, Բելոռուսիայի, Մերձբալթիկայի ազատագրման մարտերին: 1945-ի հունվարին Ղ-ի հրամանատարությամբ գործող տանկային գումարտակը Արևելյան Պրուսիայում մարտերով անցել է 150 *կմ*, ոչնչացրել թշնամու 900 զինվոր ու սպա, 30 տանկ, 86 հրանոթ ևն: Այդ մարտերում տանկային գումարտակը հմտորեն ղեկավարելու և անձնական խիզախություն ցուցաբերելու համար ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության հրամանագրով նրան շնորհվել է Սովետական Միության հերոսի կոչում: 1949-ին Ղ. ավարտել է սովետական բանակի զրահատանկային և մեքենայացված զորքերի ռազմ. ակադեմիան: Եղել է տանկային գնդի շտաբի պետ, տանկային գնդի հրամանատար: 1969-ից ՀՍՍՀ զինվորական կոմիսարն է: Ղ. ընտրվել է ՀՍՍՀ VIII—X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: ՍՍՀՄ գրողների միության անդամ է, հուշագրական ու փաստագրական գրքերի հեղինակ: Պարգևատրվել է Լենինի, Կարմիր դրոշի (2), Կարմիր աստղի, ՍՍՀՄ զինված ուժերում հայրենիքին ծառայելու համար III աստիճանի շքանշաններով և մեդալներով:

*Երկ.* Պատերազմ, մարդիկ, ճակատագրեր, գիրք 1, Ե., 1979: Четверть века на танках, 2 изд., Е., 1972: Война, люди, судьбы, кн. 1—3, Е., 1975—79.

**ՂԱԶԱՐՅԱՆ** (Տ ե ր - Ղ ա զ ա ր յ ա ն) Արշավիր Մելիքսեթի [ծն. 25.9.1914, գ. Աղավնաձոր (այժմ՝ ՀՍՍՀ Եղեգնաձորի շրջանում)], հայ սովետական դերասան և դրամատուրգ: ՀՍՍՀ ժող. արտիստ (1955): ՍՄԿԿ անդամ 1948-ից: 1935-ից աշխատում է Երևանի պատանի հանդիսատեսի թատրոնում: Լավագույն դերերից են՝ Համբո («Գիքոր», ըստ Թումանյանի), Ներսես Աշտարակեցի (Դ. Ղազազյանի «Խաչատուր Աբովյան»), Ծերուն հայրիկ (Գ. Ցաղջյանի «Ոսկի քաղաք»), Սուրաթով (Սունդուկյանի «Էլի մեկ զոհ»), Սադաթել, Էլիզբարով (Շիրվանզադեի «Պատվի համար»), Արթուր, Մոնտանելի («Բոռ», ըստ Վոյնիչի), Միլլեր (Շիլլերի «Սեր և խարդավանք»), Նեզնամով, Դուդուկին (Ա. Օստրովսկու «Անմեղ մեղավորներ»): Հեղինակ է մի շարք պիեսների՝ «Ցասման Միհր», «Երեք գիշեր», «Լուսաբաց» ևն:

**ՂԱԶԱՐՅԱՆ** Գառնիկ Սիմոնի [1888, գ. Քարահունջ (այժմ՝ ՀՍՍՀ Գորիսի շրջանում)—1960, Երևան], Անդրկովկասի հեղափոխական շարժումների մասնակից: ՍՄԿԿ անդամ 1913-ից: Սովորել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանում (1916—17): 1915-ին ընտրվել է ՌՍԴԲ(բ)Կ Թիֆլիսի կոմիտեի անդամ: Մասնակցել է Բաքվի կոմունայի պաշտպանությանը: Խմբագրել է «Կարմիր ռանչպար» (1921, Գորիս), «Մաճկալ» (1925—29) թերթերը: 1922—1924-ին եղել է կուսակցության Զանգեզուրի գավկոմի քարտուղար, 1929—1935-ին՝ ՀՍՍՀ Գլավլիտի պետ, այնու-



Հ. Լ. Ղազարյան



Վ. Հ. Ղազարյան

հետև՝ ՀՍՍՀ ռադիոկոմիտեի նախագահ և Հայկական հեռագրական գործակալության (այժմ՝ Արմենպրես) դիրեկտոր: Հրատարակել է «Ազատության շեփորը» բանաստեղծությունների ժողովածուն (1963), «Պայքարի ֆրոնտում» (1933) են գործեր:

**ՂԱԶԱՐՅԱՆ** Դանիել Ավագի (17.5.1883, Շուշի — 14.12.1958, Երևան), հայ սովետական կոմպոզիտոր, խմբավար, երգիչ, մանկավարժ: ՀՍՍՀ վաստ. ուսուցիչ (1944), արվեստի վաստ. գործիչ (1945): 1911-ին ավարտել է Թիֆլիսի երաժշտական ուսումնարանը, 1921-ին՝ կոնսերվատորիան: Եղել է ուսուցիչ, Անդրկովկասի հայկ. շրջաններում տարածել խմբերգային արվեստը, երաժշտական ստուդիաներ հիմնել Բաքուում (1922), Լենինականում (1924): 1933-ից Երևանում զբաղվել է խմբավարությամբ և մանկավարժականմեթոդական աշխատանքով: Ղ-ի ստեղծագործությունը կարևոր տեղ է զբաղում հայ երաժշտության մասսայական ժանրերում՝ մանկական երաժշտական պատկերներ, երգեր, դաշնամուրային և նվագախմբային հանրամատչելի պիեսներ, քայլերգեր են: Լայն ժողովրդականություն են վայելում Ղ-ի «Սոս և Վարդիթեր» երաժըշտականացված դրամայի հատվածները, մանավորապես քաղաքային ժողովրդա-երաժշտական ոճի վրա հիմնված երգ-ռոմանսները (Ա. Իսահակյանի «Ուռին», «Սար դարդեր», «Քույր իմ նազելի», Վ. Աղայանի «Լանջեր մարջան» են): Պարգևատրվել է Լենինի շքանշանով:

*Ռ. Աթայան*

**ՂԱԶԱՐՅԱՆ** Ենոք Սիմոնի [ծն. 6.10.1907, գ. Վելիսցիխե (այժմ՝ Վրաց. ՍՍՀ Գուրջանի շրջանում)], հայ սովետական բուսաբան: Կենսբ. գիտ. դ-ր (1966), պրոֆեսոր (1961), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1967): ՍՄԿԿ անդամ 1939-ից: Ավարտել է Երևանի համալսարանի գյուղատնտ. ֆակուլտետը (1930): 1938—1942-ին՝ Հայկ. գյուղատնտ. ինստ-ի բուսաբանության ամբիոնի վարիչ: 1935—41-ին, համատեղությամբ, եղել է Երևանի բուսաբանական այգու, ապա բուսաբանության ինստ-ի դիրեկտոր: 1941—45-ին՝ ՀԿԿ Կենտկոմի գյուղատնտեսության բաժնի վարիչ, 1945—47-ին՝ ՀՍՍՀ տեխ. կուլտուրաների ժողկոմ, 1947—52-ին և 1961—62-ին՝ գյուղատնտեսության մինիստր: 1955-ից Երևանի անասնաբուժական-անասնաբուծական ինստ-ի ագրոնոմիայի և բուսաբանության ամբիոնի վարիչն է:

Գիտ. աշխատանքները վերաբերում են բուսաբանության, երկրաբուսաբանության, մարգագետնաբուծության են հարցերին: Ղ-ի ղեկավարությամբ ուսումնասիրվում են ՀՍՍՀ բնական կերային հողանդակների բերքատվության բարձրացման վրա միկրոտարրերի և միկրոպարարտանյութերի դերի ու ազդեցության, բնական տարբեր խոտհարքների ու արոտավայրերի բուսաբանական և քիմ. կազմի խնդիրները:

ՍՍՀՄ III գումարման Գերագույն սովետի և ՀՍՍՀ II գումարման Գերագույն սովետի դեպուտատ: ՍՄԿԿ Կենտկոմի անդամ և ՀԿԿ Կենտկոմի վերստուգիչ հանձնաժողովի անդամ (1948—53): Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի, Հայրենական պատերազմի I աստիճանի և այլ շքանշաններով:

*Երկ.* Горные кормовые угодья СССР, их улучшение и использование, տես՝ Пастбища и сенокосы СССР, М., 1974. *Ա. Բեյլերյան*

**ՂԱԶԱՐՅԱՆ** Լևոն Գրիգորի (1889, ք. Կաղզվան — 1977, Երևան), Հայաստանում սովետական կարգեր հաստատելու համար մղված պայքարի մասնակից: ՍՄԿԿ անդամ 1917-ից: Հեղափոխական գործունեությունն սկսել է 1905-ից: 1910-ին Ա. Մուսայելյանի հետ Կաղզվանում կազմակերպել է մարքսիստական ընդհատակյա խմբակ: Փետրվարյան հեղափոխությունից հետո ընտրվել է Ղափանի, այնուհետև՝ Կաղզվանի բանվորների և զինվորների դեպուտատների խորհրդի նախագահ: 1919—20-ին հեղափոխական գործունեություն է տարել Կարսում, Իգդիրում և Ալեքսանդրապոլում: Մասնակցել է Մայիսյան ապստամբությանը: Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո նշանակվել է Հայաստանի փոստ-հեռագրատների ժողկոմի տեղակալ (1921—22): Այնուհետև կուսակցական և պետական ղեկավար պաշտոններ է վարել ժող. տնտեսության տարբեր բնագավառներում (հողագործության և բանջարանոցների ժողկոմի տեղակալ, մատակարարման ժողկոմ, կուսակցության Լենինականի գավառային, Կոտայքի շրջանային կոմիտեների քարտուղար, ՀԿԿ Կենտկոմի կուսակցական կոլեգիայի քարտուղար): Ընտրվել է ՀամԿ(բ)Կ Անդրկովկասի երկրկոմի և Անդրկովկասի Կենտգործկոմի անդամ: Եղել է Սովետների XI համագումարի պատվիրակ: Պարգևատրվել է Լենինի շքանշանով:

**ՂԱԶԱՐՅԱՆ** Լևոն Զարմայրի [ծն. 17.7. 1908, Զալալօղլի (այժմ՝ Ստեփանավան)], հայ սովետական քիմիկոս: Քիմ. գիտ. դ-ր (1953), պրոֆեսոր (1953), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1965): ՍՄԿԿ անդամ 1940-ից: Ավարտել է Երևանի համալսարանի գյուղատնտ. (1930) և պոլիտեխնիկական ինստ-ի քիմիկա-տեխնոլոգիական (1935) ֆակուլտետները: 1938—79-ին՝ պոլիտեխնիկական ինստ-ի օրգ. քիմիայի ամբիոնի վարիչ, 1939—44-ին՝ նաև քիմիկա-տեխնոլոգիական ֆակուլտետի դեկան: Գիտ. աշխատանքները վերաբերում են տեղական հումքից քրոմպիկի (հիմք է հանդիսացել Երևանի քրոմպիկի գործարանի կառուցման համար), ացետիլենային ալկոհոլների ու դիոլների (որի համար արժանացել է երիտասարդ գիտաշխատողների համամիութենական մրցանակի, 1938), ցավազրկիչ նյութերի, պոլիվինիլացետալների և պոլիվինիլամինացետալների ստացման եղանակների մշակման հարցերին:

*Վ. Ալչուջյան*

**ՂԱԶԱՐՅԱՆ** Լիտվին Էլիգումի [ծն. 13.6. 1929, գ. Դսեղ (ՀՍՍՀ Թումանյանի շրջանում)], սովետական կուսակցական և պետական աշխատող: ՀՍՍՀ վաստ. ինժեներ (1975): ՍՄԿԿ անդամ 1952-ից: Ավարտել է Երևանի Կ. Մարքսի անվ. պոլիտեխնիկական ինստ-ի մեխանիկական ֆակուլտետը (1952): 1960-ին ընտրվել է ՀԿԿ Երևանի Լենինյան (ներկայումս՝ Օրջոնիկիձեի) շրջկոմի քարտուղար: 1962-ից եղել է ՀԿԿ ԿԿ-ի կուսօրգանների բաժնի պատասխանատու կազմակերպիչ, 1963-ից՝ ՀԿԿ Երևանի 26 կոմիսարների շրջկոմի առաջին քարտուղար: 1971—1980-ին Ղ. Քանաքեռի ալյումինի գործարանի դիրեկտորն էր: 1980-ից ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրն է: Եղել է ՀԿԿ ԿԿ-ի անդամության թեկնածու (1964—71), ՀԿԿ ԿԿ-ի վերստուգիչ հանձնաժողովի անդամ (1976—80), ՀԿԿ ԿԿ-ի անդամ (1981-ից): ՀՍՍՀ VIII—X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ է: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի 2 և «Պատվո նշան» շքանշաններով:

**ՂԱԶԱՐՅԱՆ** Հայկ Միրզաջանի [ծն. 23.7. 1930, գ. Ներքին Գյոզալդարա (այժմ՝ Վարդենիկ, ՀՍՍՀ Մարտունու շրջանում)], հայ սովետական պատմաբան: Պատմական գիտ. դ-ր (1968), պրոֆեսոր (1971): 1952-ին ավարտել է Երևանի Խ. Աբովյանի անվան հայկ. մանկավարժական ինստ-ի պատմության ֆակուլտետը: 1958—76-ին՝ ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստ-ի ավագ գիտաշխատող, 1976-ից՝ Երևանի համալսարանի ՍՍՀՄ պատմության ամբիոնի վարիչ: Աշխատությունները վերաբերում են Արևմտյան Հայաստանի XIX դ. սոցիալ-տնտեսական կյանքի, հայ ազգայինազատագրական շարժումների և հայ հասարակական-քաղաքական հոսանքների պատմությանը: Համահեղինակ է ՀՍՍՀ ԳԱ հրատարակած «Հայ ժողովրդի պատմության» IV և V, «Հայ նոր գրականության պատմության» II և III հատորների:

*Երկ.* Մատթեոս Մամուրյան, Ե., 1961: Արևմտահայերի սոցիալ-տնտեսական և քաղաքական կացությունը 1800—1870 թթ., Ե., 1967: Армянское общественно-политическое движение в 50—60-х годах XIX века и Россия, Е., 1979.

**ՂԱԶԱՐՅԱՆ** Հմայակ Լևոնի [ծն. 1907, գ. Խառակոնիս (Վանի նահանգում)], կապիտան, Սովետական Միության հերոս (22.2.1944): Սովորել է Բաքվի ռազմ. դպրոցում: 1934-ից ծառայել է հայկ. դիվիզիայում: 1943-ի սեպտ. 27—28-ին Հ-ի գումարտակը կատաղի մարտեր է մղել Դնեպրի գետանցման համար: Դնեպրի աջ ափին հենակետ ստեղծելու, գումարտակի մարտական գործողությունները հմտորեն ղեկավարելու համար ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության հրամանագրով Ղ-ին շնորհվել է Սովետական Միության հերոսի կոչում:

**ՂԱԶԱՐՅԱՆ** Ռաֆայել Ավետիսի (ծն. 26.1. 1924, Արմավիր, Կրասնոդարի մարզ), հայ սովետական ռադիոֆիզիկոս: Տեխ. գիտ.

դ-ր (1975), պրոֆեսոր (1978): Ավարտել է Մոսկվայի կապի էլեկտրատեխ. ինստ-ը (1951): 1958-ին կազմակերպել և մինչև 1969-ը ղեկավարել է Երևանի համալսարանի ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ամբիոնը: 1970-ից ՀՍՍՀ ԳԱ ՖՀԻ-ի քվանտային էլեկտրոնիկայի՝ իր հիմնադրած բաժնի վարիչն է: Աշխատանքները վերաբերում են շղթաների, կիրառական ինֆորմացիայի, լազերային կապի պրոբլեմներին: Նրա ղեկավարությամբ ստեղծվել և շահագործման է հանձնվել (1969) Երևան—Բյուրական լազերային բազմականալ հեռախոսագիծը, որն առաջիններից մեկն էր աշխարհում: Աշխատակիցների հետ ուսումնասիրել է մթնոլորտում լուսային ալիքների տարածման և լազերային կապի արդյունավետության բարձրացման հարցերը:

*Երկ.* Ձեռնարկ ռադիոսիրողների համար, Ե., 1961 (հեղինակակից Ա. Գ. Խալաթյան):

**ՂԱԶԱՐՅԱՆ** Սերոբ Ղազարի (1910, Բիթլիս — 11.4.1962, Երևան), հայ սովետական լեզվաբան: Բան. գիտ. դ-ր (1953), պրոֆեսոր (1954): 1939-ին ավարտել է Երևանի մանկավարժական ինստ-ը: 1940—1962-ին դասախոսել է Երևանի համալսարանում: 1937—48-ին եղել է «Սովետական դպրոց» թերթի խմբագիրը, 1944—1959-ին ղեկավարել է ՀՍՍՀ ԳԱ լեզվի ինստ-ի հայոց լեզվի պատմության և բարբառագիտության բաժինը: Ղ. իր ուսումնասիրություններում անդրադարձել է գրաբարի քերականությանը, հայոց լեզվի պատմությանը, ռուսերենի դերին հայոց լեզվի հարստացման ու զարգացման գործում, միջին հայերենին ևն: «Հայոց գրական լեզվի պատմություն» (1961) գրքում քննել է գրաբար գեղարվեստական գրականության լեզվական առանձնահատկությունները, զարգացման օրինաչափությունները: Կազմել է մայրենի լեզվի դասագրքեր, տերմինաբանական կոմիտեի ուղեցույց ևն:

*Երկ.* Գրաբարի դասագիրք, Ե., 1951: Հայոց լեզվի համառոտ պատմություն, Ե., 1954: Ժամանակակից հայոց լեզուն և ռուսերենի դերը նրա հարստացման ու զարգացման մեջ, Ե., 1955: Միջին հայերեն, գիրք 1, Ե., 1960:

**ՂԱԶԱՐՅԱՆ** Վահան Հովսեփի [ծն. 1.1. 1918, գ. Խնձորեսկ (այժմ՝ ՀՍՍՀ Գորիսի շրջանում)], հայ սովետական ֆիտոֆիզիոլոգ, բուսաբան: Կենսբ. գիտ. դ-ր (1951), պրոֆեսոր (1952), ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1974): ՍՄԿԿ անդամ 1945-ից: Ավարտել է Երևանի համալսարանի կենսաբանական ֆակուլտետը (1941): Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: 1945—48-ին դասախոսել է Երևանի Խ. Աբովյանի անվ. մանկավարժական ինստ-ում: Եղել է Երևանի համալսարանի կենսբ. ֆակուլտետի բույսերի ֆիզիոլոգիայի և անատոմիայի ամբիոնի վարիչ (1948—68), ՀՍՍՀ ԳԱ բուսաբանության ինստ-ի բույսերի ֆիզիոլոգիայի լաբորատորիայի վարիչ (1946-ից), 1949-ից՝ նույն ինստ-ի դիրեկտոր: 1946—70-ին՝ ՀՍՍՀ ԳԱ կենսաբանական գիտությունների բաժանմունքի ակադեմիկոս քարտուղարի տեղակալ, 1970-ից՝ ակադեմիկոս քարտուղար և ԳԱ Նախագահության անդամ:

Ղ-ի գիտական աշխատանքները վերաբերում են բարձրակարգ բույսերի անհատական զարգացման պրոբլեմներին. մշակել է բարձրակարգ բույսերի ծերացման նոր տեսություն: Ղ. պարզել է, որ բույսերի երկամյաության բնույթը պայմանավորված է գազաթնային բողբոջների դոմինանտ վիճակով: Ղ. կոռելացիոն կապ է հայտնաբերել ցողունի ֆլոեմայի և քլորոֆիլակիր ֆելոդերմի միջև: Նա նկարագրել է բարձրակարգ բույսերի անհատական զարգացման գլխավոր և երկրորդական հակասական ու միասնական պրոցեսները, զարգացումը դիտել որպես օնտոգենեզին բնորոշ գլխավոր հակասությունների հերթափոխման պրոցես: Ղ-ի նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ մշակվել են ՀՍՍՀ անտառապատման և կանաչապատման գիտական հիմունքները: Ղ. Հայաստանի բուսաբանների ընկերության նախագահն է (1953-ից), Հայաստանի բնության պահպանության ընկերության նախագահության նախագահը (1974-ից), Համամիութենական բուսաբանական ընկերության (1972-ից), բույսերի կենսաքիմիայի և ֆիզիոլոգիայի (1971-ից) խորհուրդների անդամ է, Հայաստանի ֆլորայի, բուսականության և բուսական պաշարների պահպանության և ռացիոնալ օգտագործման կոորդինացման խորհրդի նախագահը:

Դիմանկարը տես 21-րդ էջում:

*Երկ.* Физиологические особенности развития двухлетних растений, Е., 1954; Физиологические основы онтогенеза растений, Е., 1959; Старение высших растений, М., 1969; Научные основы облесения и озеленения Армянской ССР, Е., 1974 (с соавторами).

**ՂԱԶԱՐՅԱՆ** Վրույր Սարգսի (ծն. 10.1. 1902, ք. Արաբկիր), հայ սովետական անասնաբույժ: Անասնաբուժական գիտ. դ-ր (1948), պրոֆեսոր (1948), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1961): 1924-ից ԱՄՆ-ի կոմունիստական կուսակցության անդամ: ՍՄԿԿ անդամ 1929-ից: Ավարտել է Կոռնիշի (Նյու Յորքի նահանգ) համալսարանի անասնաբուժության բաժինը: 1926-ին ներգաղթել է Սովետական Հայաստան: 1930-ին կազմակերպել և ղեկավարել է Հայկ. անասնաբուժական ինստ-ի խոշոր եղջերավոր կենդանիների վարակիչ հիվանդությունների ուսումնասիրության բաժինը: 1949—74-ին Երևանի անասնաբուծական-անասնաբուժական ինստ-ի զոոհիգիենայի և անասնաբուժության հիմունքների ամբիոնի վարիչ: Գիտական աշխատանքները նվիրված են խոշոր եղջերավորների ժանտախտի, խլշշան պալարի, լեպտոսպիրոզի, մատղաշների վարակիչ ևն հիվանդությունների նկարագրման, դրանց դեմ պայքարի և բուժման արդյունավետ միջոցների մշակման հարցերին:

*Երկ.* Հորթերի պարատիֆ հիվանդությունը, Ե., 1937: Գառների սպիտակ մկանային հիվանդությունը, Ե., 1963: Ոչխարների խրոնիկ թունավորում, Ե., 1965:

**ՂԱԶԱՐՈՍՅԱՆ** Գոհարիկ (1911, Կ. Պոլիս — 28.10.1957, Փարիզ), հայ կոմպոզիտոր, դաշնակահար: Փարիզում աշակերտել է Լ. Լևիին (դաշնամուր), Պ. Դյուկային և Ժ. Ռոժե-Դյուկասին (կոմպոզիցիա): Բնակվել է Կ. Պոլսում: Զբաղվել է նաև մանկավարժական և երաժշտական-հասարակական գործունեությամբ:



Գ. Ղազարոսյան



Ա. Ղազիկյան

1934-ից համերգներով հանդես է եկել Եվրոպայի բազմաթիվ քաղաքներում և ԱՄՆ-ում: Կատարել է հնագույն վարպետներից մինչև նորագույնների երկեր (ներառյալ Կոմիտասի և սեփական գործերը): Գրել է կամերային գործեր, դաշնամուրային երկու կոնցերտ, «Մի մայր պատմություն» բալետը (ըստ Անդերսենի), ստեղծել է ծավալուն «պատմողական» հայկ. երգի ինքնատիպ տեսակ (Ա. Իսահակյանի «Կտակ», Ս. Կապուտիկյանի «Սիրերգ», Մեծարենցի «Եկեսցե» խմբերգը դաշնամուրով ևն): Մեղեդիական արվեստը արմատներով կապված է հայկ. ժող. և հոգևոր երգին, ներդաշնակությունը զարգացել է ժողովրդականի հետ սերտ միաձուլվող դիատոնիզմից, հասել մինչև խրոմատիզմի և դիսոնանսների գործածության XX դ. բնորոշ առատությանը: Տպագրված են դաշնամուրային 24 էտյուդները, Կոմիտասի՝ 1913-ին հավաքած ժող. երգերից 20-ի դաշնամուրային շարադրությունը, աշուղական երգերի մշակումներ ևն: *Ռ. Աթայան*

**ՂԱԶԻԿՅԱՆ** Ալեքսանդր [8(20).1.1848, գ. Ստեփանծմինդա (այժմ՝ Ղազբեգի)— 10(22).12.1893, Թիֆլիս], վրացի գրող: Ծնվել է Գորիի նահանգի կառավարչի ընտանիքում: Հոր մահից հետո վարել է կալվածատիրական մեծ տնտեսությունը. գյուղացիներին ազատել է հարկերից, հրաժարվել իշխող ֆեոդալի իր դիրքերից և 7 տարի հովվություն է արել սարերում: 1879-ից ապրել է Թիֆլիսում, աշխատել «Դրոեբա» թերթում, որտեղ 1881-ին տպագրել է իր «Էլգուջա» վեպը՝ պատկերելով պատվի ու ազատության համար մարտնչող լեռնցիների: Վեպի առանձին հրատարակության տպաքանակը բռնագրավել և այրել է ոստիկանությունը: Այնուհետև լույս են տեսել Ղ-ի «Էլիսո» (1882), «Հայրասպանը» (1882), «Ցիկո» (1883), «Թրշվառը» (1884), «Ձորի նահապետ Գոչա» (1884), «Հովիվը» (1885) վիպակները: Զրկանքներն ու հետապնդումները Ղ-ին հասցրել են հոգեկան ծանր հիվանդության: Մահացել է միայնության ու կարիքի մեջ: Ղ. XIX դ. վրաց. արձակի խոշոր վարպետներից է:

*Երկ.* Պատմվածքներ, Ե., 1948:

**ՂԱԶԻ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Քղիի գավառում, ժայռոտ բարձունքի վրա: Շրջապատված էր պտղատու ծառերով: 1909-ին ուներ 105 (15 ընտանիք) բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ և այգեգործությամբ: Գյուղում կար եկեղեցի (Ս. Եղիա, կառուցված 1870-ին)

և վարժարան: Ղ-ի հայերը տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է բռնագաղթի ճանապարհին:

**ՂԱԶԻԿՅԱՆ** Արսեն [8.10.1870, Պարտիզակ—9.6.1932, Պադուա (Իտալիա)], հայ մատենագետ, թարգմանիչ, բանասեր, մանկավարժ: Սկզբնական կրթությունն ստացել է ծննդավայրում: 1888-ին հաստատվել է Վենետիկի Ս. Ղազար կղզում, շարունակել ուսումնառությունը: 1895-ին դարձել է Մխիթարյան միաբանության անդամ, սկսել գրական-թարգմանական և մանկավարժական գործունեությունը: Նախապես գրել է գրաբար, ապա անցել աշխարհաբարի՝ դառնալով վերջինիս հետևողական պաշտպանը: Թարգմանել է եվրոպական դասական և իր ժամանակի բանաստեղծների շատ երկեր, այդ թվում՝ Հոմերոսի «Իլիական»-ը (1911) և «Ոդիսական»-ը (1924), Վիրգիլիոսի «Էնեական»-ը (1910) և «Մշակականք»-ը (1923), Սոֆոկլեսի «Իդիպոս թագավորը» (1927), Հորացիոսի «Արվեստ քերթողական»-ը (1923), «Ռոլանդի երգը» (1925) ֆրանս. և «Նիբելունգների երգը» (1925) գերմ. դյուցազնավեպերը ևն: Աշխատակցել է Մխիթարյան պարբերականներին («Բազմավեպ», «Մխիթար», «Գեղունի». եղել է նաև վերջինիս խմբագիրը), հրատարակել բանաստեղծություններ, թարգմանություններ, գրականագիտական ու լեզվաբանական հոդվածներ: Ղ. զարգացման նոր աստիճանի է հասցրել արևմտահայ բանաստեղծական լեզուն: Հայերենի անաղարտության ջատագով լինելու համար ստացել է «պահապան հրեշտակ հայ լեզվի» մականունը: Հայերեն է դասավանդել Մխիթարյանների մի շարք դպրոցներում, գլխավորապես Վենետիկում (Մուրատ-Ռափայելյան վարժարան) և Կ. Պոլսում: Միաբանության հանձնարարությամբ 1898-ից զբաղվել է Գ. Զարբհանալյանի «Հայկական մատենագիտության» խմբագրման ու լրացման գործով, որը վերածվել է ինքնուրույն մատենագիտության ստեղծման: Աշխատանքը տևել է 14 տարի, հրապարակել է մաս առ մաս 1909—1914 թթ.՝ «Հայկական նոր մատենագիտություն և հանրագիտարան հայ կյանքի» վերնագրով: Ընդգրկում է հայ տպագիր գիրքը 1512-ից մինչև 1905-ը: Կազմված է հեղինակների ազգանունների (հին հեղինակների անունների) և մասամբ վերնագրերի այբբենական կարգով: Նյութերի ընդգրկման համեմատական լրիվությամբ, տեղեկատվության ճշգրտությամբ և բազմակողմանիությամբ Ղ-ի աշխատությունը մեծարժեք ներդրում է հայ տպագիր գրքի մատենագիտության ասպարեզում: Ըստ Ղ-ի ծրագրի՝ մատենագիտությունը պետք է ընդգրկեր նաև այլալեզու հայագիտական գրականությունը և ամբողջ հայ պարբերական մամուլը: Մեծ եղեռնի օրերին Պարտիզակում կորել է ձեռագրերի շարունակությունը, և հրատարակությունն ընդհատվել է Ն տառի սահմանում (Նուրիխան տերմինով):

*Գրկ.* Փ ե չ ի կ յ ա ն  հ. Ե., Հ. Արսեն Վ. Ղ. Ղազիկյան [մահախոսական], «Բազմավեպ», 1932, № 6—7: Ճ ա ն ա շ յ ա ն  Մ., Հետադարձ ակնարկ Հայր Արսեն Ղազիկյանի կատարած դերին հայերենի զարգացման մեջ, «Բազմավեպ», 1970, № 11—12: Ն ո ւ յ ն ի, Հ. Արսեն Ղազիկյան և իր թարգմանությունները, Վնտ., 1979: Ի շ խ ա ն յ ա ն  Ռ., Հայ մատենագրության պատմություն, պրակ 2, Ե., 1968: *Ս. Շտիկյան Ռ. Իշխանյան*

**ՂԱԶ-ՂԱԶ**, տղամարդկանց հայկական ժողովրդական խմբապար: Նմանողական շարժումներով տոտեմական թռչնապար է: Տարածված է Հայաստանի, հատկապես դաշտավայրային շրջաններում: Պարն ունի գլուխ՝ մայր, և պոչ՝ թոփալ ղազ: Բոլոր պարողներն ունեն դալար ճիպոտներ (մտրակներ): «Մայրը» պարելու ընթացքում աստիճանաբար հանում է շորերը (ներկայացնում է շարժումներով), մյուսները կրկնում են: Ուշացողներին մտրակում են: Պարաքայլը ոտք փոխելն է (chassé): Պարեղանակը մեկն է և անընդհատ կրկնվում է տարբեր վարիացիաներով: Ամեն շրջան ունի իր տարբերակը և անունը (Զոփի, Ցալլի, Կյազկյազ ևն):

*Ժ. Խաչատրյան*

**ՂԱԶ-ՄԱՂԱՐԱ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Սեբաստիայի վիլայեթի Թոնուսի գավառում: 1914-ին ուներ մոտ 1200 (150 ընտանիք) հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ, արհեստներով և անասնապահությամբ: Կար եկեղեցի և վարժարան: Բնակիչները զոհվել են հայրենի գյուղում, 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ:

**ՂԱԶՎԻՆ**, քաղաք Իրանի հյուսիս-արևմուտքում, Թեհրան օստանում: 118 հզ. բն. (1975): Երկաթուղային կայարան է, ավտոճանապարհների հանգույց, առևտրական և գորգագործության կենտրոն: Կան սննդարդյունաբերության և տեքստիլ ձեռնարկություններ: Ղ. հայտնի է Սասանյանների ժամանակներից: XVI դ. դարձել է Սեֆյանների պետության մայրաքաղաքը: Եղել է մանրանկարչության կենտրոն (XVI— XVII դդ.), պահպանված են մզկիթներ (XII դ.):

**ՂԱԼԱՄԵԼԻՔ**, հայաբնակ գյուղ Իրանում, Սպահանի նահանգի Փերիա (Ֆերեյդան) գավառի Վարզադ գավառակում: Ղ-ում հայերը հաստատվել են 1887-ին (եկել են Փերիայի այլ գյուղերից): 1970-ին գյուղն ուներ 20 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում են երկրագործությամբ և անասնապահությամբ: Ղ-ում կա եկեղեցի (Ս. Եղիշե), դպրոց: Դպրոցական շենք չունենալու պատճառով դասերն անցկացվում են մասնավոր տներում:

**ՂԱԼԱՉԱ** (1978-ից՝ Բերդավան), գյուղ Հայկական ՍՍՀ Նոյեմբերյանի շրջանում, շրջկենտրոնից 8 *կմ* հյուսիս-արևելք: Պտղախաղողագործական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև ծխախոտի, բանջարաբոստանային կուլտուրաների մշակությամբ և անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի պալատ, գրադարան, կինո, կապի բաժանմունք, ավտոմատ հեռախոսակայան, կենցաղսպասարկման տաղավար, մանկապարտեզ, բուժկայան: Ղ-ում գործում է Հայկոոպի արդ. միավորման Նոյեմբերյանի սնունդ կոմբինատը, Լալվար սովխոզ-գործարանի Ղալաչայի գինու կետը, «Հայգյուղտեխնիկա»-ի շրջանային բաժանմունքը և Նոյեմբերյանի ավտոտրանսպորտի ձեռնարկությունը: Ղ-ում և շրջակայքում պահպանվել են Ղալինջաքար կիսավեր ամրոցը (X— XI դդ.), եկեղեցիներ (XIII— XIV և XVIII դդ.), գերեզմանոց խաչքարերով (X— XIV դդ.): Ղ-ում են ծնվել հայ սովետական գենետիկ-սելեկցիոներ, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Վ. Գուլքանյանը, գյուղատնտես Ա. Աղինյանը, բառարանագիր և պատմաբան Հ. Դաղբաշյանը և սոցիալիստական աշխատանքի հերոս, մանկավարժ Ս. Դաղբաշյանը:



Բերդավան (Ղալաչա)

**ՂԱԼԻՄ**, հարսնացուի հատուցագինը (փող, անասուններ, որևէ այլ գույք, անձնական աշխատանք), որ տալիս են փեսացուն, նրա ազգականները կամ խնամիները՝ հարսնացուի ազգականներին կամ խնամիներին: Ղ. որպես սովորութային մնացուկ պահպանվում է Արևելքի մի շարք երկրներում: ՀՍՍՀ քրեական օրենսգրքով (հոդված 122) պատասխանատվություն է նախատեսվում ինչպես Ղ. տալու, այնպես և ընդունելու համար՝ տուգանք մինչև 500 ռուբլի՝ հատուցագնի բռնագրավումով: *Ա. Թովմասյան*

**ՂԱԼՏԻ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Սեբաստիայի վիլայեթի համանուն գավառում: 1914-ին ուներ 800 (100 ընտանիք) հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ, արհեստներով և անասնապահությամբ: Կար եկեղեցի (Ս. Սարգիս) և վարժարան: Բնակիչները զոհվել են հայրենի գյուղում, 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ:

**ՂԱԼՈՒՄՅԱՆ** Վլադիմիր Բագրատի (ծն. 16.1.1932, գ. Սնքար, ՀՍՍՀ Իջևանի շրջան), սովետական կուսակցական և պետական աշխատող: ՍՄԿԿ անդամ 1953-ից: 1955-ին ավարտել է Հայկ. գյուղատնտ. ինստ-ի ագրոնոմիական ֆակուլտետը: Աշխատել է Իջևանի շրջանի ՄՏ կայանում, Սնքարի կոլտնտեսությունում, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր հացամթերումների վարչությունում որպես գյուղատնտես: 1961—62-ին եղել է ՀՍՍՀ մթերումների մինիստրության բուսաբուծական մթերքների գնումների վերահսկողության տեսչության, 1962—64-ին՝ ՀՍՍՀ գյուղատնտ. մթերքների արտադրության ու մթերումների մինիստրության վարչության պետ: 1964-ին ընտրվել է Իջևանի շրջանի կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների արտադրական վարչության կուսկոմիտեի քարտուղար, 1965—70-ին՝ ՀԿԿ Իջևանի շրջկոմի առաջին քարտուղար: 1970—72-ին եղել է ՀԿԿ ԿԿ-ի գյուղատնտեսության բաժնի վարիչ, 1972-ից ՀԿԿ ԿԿ-ի քարտուղար է: ՀԿԿ ԿԿ-ի անդամության թեկնածու է 1966-ից,

ՀԿԿ ԿԿ-ի անդամ՝ 1971-ից, ԿԿ-ի բյուրոյի անդամ՝ 1972-ից: ՀՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության անդամ՝ 1966-ից: ՀՍՍՀ VII—X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ է: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի 3 շքանշանով:

**ՂԱՀՀԱՐ** Աբդուլլա (1907—1968), ուզբեկ սովետական գրող: ՍՄԿԿ անդամ 1952-ից: Լույս է ընծայել «Աշխարհը երիտասարդանում է» (1933), «Պատմվածքներ» (1935) ժողովածուները, «Տեսիլք» (1937) վեպը: Հայրենական մեծ պատերազմի տարիներին գրել է ակնարկներ ու պատմվածքներ: Հրատարակվել են նաև «Կոշչինարի կրակները» (1951—52) վեպը, «Պատլիկ-թռչնիկը» (1958), «Սեր» (1969) և ինքնակենսագրական «Հեքիաթներ եղելության» (1965) վիպակները, «Նոր երկրում», «Մետաքսե սյուզանե» (1950, ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1952), «Հիվանդ ատամներ» (1954) կատակերգությունները:

**ՂԱՄԱՐԱ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Սղերդի գավառի Գենջի գավառակում: 1909-ին ուներ 7 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Ղ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՂԱՄԲԱՐՅԱՆ** Կարլեն Հմայակի [ծն. 17.2. 1927, գ. Ժդանով (ներկայումս՝ Կիրովականի տարածքում)], սովետական կուսակցական և պետական աշխատող: ՀՍՍՀ վաստակավոր ինժեներ (1977): ՍՄԿԿ անդամ 1946-ից: Ավարտել է Երևանի Կ. Մարքսի անվ. պոլիտեխնիկական ինստ-ի մեխանիկա-մեքենաշինական ֆակուլտետը (1950), ՍՄԿԿ ԿԿ-ին կից բարձրագույն կուսակցական դպրոցը (1958): 1950-ից աշխատել է Երևանի էլեկտրատեխնիկական գործարանում: 1955-ին ընտրվել է ՀԿԿ Օրջոնիկիձեի շրջկոմի առաջին քարտուղար: 1958-ից աշխատել է ՀԿԿ ԿԿ-ի ապարատում: 1959-ին ընտրվել է ՀԿԿ Հրազդանի շրջկոմի առաջին քարտուղար: 1961-ից՝ ՀԿԿ ԿԿ-ի արդյունաբերության և տրանսպորտի բաժնի վարիչ, միաժամանակ (1963—65)՝ արդյունաբերության և շինարարության ղեկավարման գծով ՀԿԿ ԿԿ-ի բյուրոյի նախագահի տեղակալ: 1975—81-ին Ղ. եղել է ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ: 1981-ից՝ ՀԿԿ ԿԿ-ի քարտուղար և ՀԿԿ ԿԿ-ի բյուրոյի անդամ: 1960-ից Ղ. ՀԿԿ ԿԿ-ի անդամ է: ՀՍՍՀ V—X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի 4 շքանշաններով և մեդալներով:

**ՂԱՄԲԱՐՅԱՆ** Մարիա Ստեփանի (ծն. 1.10.1925, Երևան), հայ սովետական դաշնակահարուհի, մանկավարժ: ՀՍՍՀ վաստ. արտիստուհի (1966): 1948-ին ավարտել է Մոսկվայի կոնսերվատորիան (Կ. Ն. Իգումնովի դասարան), 1951-ին՝ ասպիրանտուրան (դասատուները՝ Գ. Գ. Նեյգաուզ, Լ. Ն. Օբորին): 1953—55-ին դասավանդել է Լենինգրադի կոնսերվատորիայում, ապա՝ Մոսկվայի Գնեսինների անվ. երաժշտական-մանկավարժական



Պ. Պ. Ղամբարյան



Ս. Պ. Ղամբարյան

ինստ-ում: Համերգային գործունեությունը սկսել է 1951-ից: Կատարմանը բնորոշ է ոճի հստակությունը, բարձր պրոֆեսիոնալիզմը: Համերգացանկը ընդգրկում է Բախի, Բեթհովենի, Շոպենի, Շումանի, Շուբերտի, Ս. Մելիքյանի, Ա. Խաչատրյանի, Ա. Բաբաջանյանի երկերը:

*Ե. Ափոյան*

**ՂԱՄԲԱՐՅԱՆ** Պետրոս Պողոսի (3.5.1899, Թիֆլիս — 8.2.1934), հայ սովետական երկրաբան: 1922—27-ին սովորել է Սորբոնի համալսարանում, աշակերտել անվանի երկրաբան Բոնեին, ընտրվել Ֆրանսիայի հանքաբանական ընկերության իսկական անդամ: 1927—30-ին աշխատել է Երևանի համալսարանում որպես քիմ. լաբորատորիայի վարիչ և երկրաբանական առարկաների դասախոս, իսկ 1930—33-ին՝ պոլիտեխնիկական ինստ-ում: Ղ. մանկավարժական աշխատանքին զուգընթաց կատարել է գիտական հետազոտություններ: 1928—33-ին ուսումնասիրել է Մերձերևանյան շրջանի երկրաբանական կառուցվածքը և օգտակար հանածոները (դիատոմիտ, մարմար, կավ, բազալտ ևն): 1929-ին մասնակցել է ՍՍՀՄ ԳԱ անդրկովկասյան արշավախմբի աշխատանքներին իբրև Երևանի ջրկայանի պետ, հետազոտել Հրազդան գետի միջին հոսանքի երկրաբանական կառուցվածքը, կազմել այդ տարածքի երկրաբանական քարտեզը: Ղ. զոհվել է ինքնաթիռի աղետի ժամանակ:

**ՂԱՄԲԱՐՅԱՆ** Ստեփան Պողոսի [23.6. 1879, Կոջոր (այժմ՝ Վրաց. ՍՍՀ-ում)— 7.3.1948, Մոսկվա, թաղված է Երևանում], հայ սովետական քիմիկոս, սովետահայ քիմիկոսների գիտական դպրոցի հիմնադիրը: Քիմ. գիտ. դ-ր (1937), պրոֆեսոր (1926), ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ (1944), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1935): Ավարտել է Ռիգայի դասական գիմնազիան (1898), ապա սովորել Մյունխենի, Լայպցիգի և Հայդելբերգի համալսարաններում (1899—1906): 1907—11-ին աշխատել է պրոֆեսորներ Թիլեի (Ստրասբուրգ), Վիլշտետերի, Վիլանդի (Մյունխեն) և Բյուխների (Բեռլին) հետ, 1911—14-ին՝ Բաքվի ռուս. տեխ. ընկերության քիմիայի, 1914—20-ին՝ Թիֆլիսի երկրագործական դեպարտամենտի քիմիամանրէաբանության լաբորատորիաներում և դասախոսել Թիֆլիսի կանանց բարձրագույն դասընթացներում: 1920-ին Ղ. հրավիրվել է Երևան, հիմնադրել և ղեկավարել Երևանի համալսարանի, պոլիտեխնիկական, բժշկ., գյուղատնտ. և անասնաբուժական-անասնաբուծական ինստ-ների օրգ. քիմիայի ամբիոնները և լաբորատորիաները: Ղ. քիմ. պարբերականների առաջին գրադարանի հիմնադիրն է Հայաստանում: 1935—38-ին՝ ՍՍՀՄ ԳԱ հայկական մասնաճյուղի նախագահության անդամ և օրգ. քիմիայի բաժնի վարիչ: 1938—44-ին աշխատել է Սեմիպալատինսկի մարզում, իսկ 1944-ից՝ ՀՍՍՀ ԳԱ քիմիայի ինստ-ում:

Ղ. առաջիններից էր, որ զբաղվեց օրգ. նյութերը գերօքսիդներով օքսիդացնելու ռեակցիաների հետազոտությամբ: Ուսումնասիրելով դիֆենիլամինի ռեակցիաները բենզոիլ և ացետիլգերօքսիդների հետ՝ նա ցույց տվեց, որ առաջնային ակտում գոյացած գերօքսիդները տրոհվում են զուգաչափորեն 0—0 կապի տեղում՝ առաջացնելով ազատ ռադիկալներ (1905—07): N — արիլ— N—ացիլօրթոամինաֆենոլի առաջացումն այդ ռեակցիաներում նա բացատրեց դիֆենիլհիդրօքսիլամինի հետագա վերախմբավորմամբ (1909): Ղ. հայտնաբերեց դիֆենիլամինի հեշտությամբ օքսիդանալու հատկությունը և առաջինն ստացավ տետրաֆենիլ հիդրազին: Հետազոտելով վերջինիս փոխազդեցությունը թթուների հետ՝ Ղ. հաստատեց, որ տեղի է ունենում N—N կապի խզում: Ավելի ուշ նա հիմնավորեց, որ ալկիլֆենիլամինի և բենզոիլպերօքսիդի փոխազդեցության դեպքում տեղի է ունենում ալկիլֆենիլհիդրօքսիլամինի վերախմբավորում: Այդ հետազոտություններին զուգընթաց Ղ. Հայաստանում զբաղվում է նաև տեղական այրվող թերթաքարերի, եթերայուղատու բույսերի ուսումնասիրությամբ, իսկ կարբիդի գործարանը գործարկելուց հետո՝ նաև ացետիլենի քիմիայով (քացախաթթվի, պլաստմասսաների, քլոր պարունակող օրգ. լուծիչների, գյուղատնտ. կենդանիների պարազիտային հիվանդությունների դեմ պայքարի միջոցների՝ տետրաքլորէթիլենի և հեքսաքլորէթանի ստացումը ևն), ացետիլենից քլորոպրենային կաուչուկի ստացման գիտական և տեխնոլոգիական չմշակված առանձին խնդիրների լուծմամբ: Ղ-ի հետազոտությունները դարձան Հայաստանում օրգ. քիմիայի հետագա զարգացման հիմքը:

*Ս. Բաբայան, Վ. Ալպատյան, Լ. Գյուլբուդաղյան*

**ՂԱՄԲԱՐՈՎ** Յուրի Ստեպանովիչ (1850, Թիֆլիս — 1926), հայ իրավաբան, իրավունքի տեսաբան: Մոսկվայի համալսարանի պրոֆեսոր (1884—99): Փարիզի Հասարակական գիտությունների բարձրագույն ռուս. դպրոցի (1900) հիմնադիրներից, դասավանդել է Բրյուսելի համալսարանում: 1906-ից՝ Պետերբուրգի պոլիտեխնիկական ինստ-ի քաղաքացիական իրավունքի ամբիոնի վարիչ: Զարգացրել է գերմանացի իրավաբան Ռ. Իհերինգի քաղաքացիական իրավունքի բուրժ. սոցիոլոգիական ուղղությունը, եղել է իրավունքի ուսումնասիրման պատմահամեմատական մեթոդի կողմնակից: «Քաղաքացիական իրավունքի դասընթաց»-ում (1911) տուրք է տվել էկլեկտիկական գաղափարների: Տարբեր պետությունների իրավունքի համակարգը համադրելու միջոցով Ղ. փորձել է բուրժ. դիրքերից ստեղծել ընդհանուր քաղաքացիական իրավունքի գիտություն: Ղ-ի խմբագրությամբ լույս է տեսել «Հասարակական-իրավաբանա-

կան գիտությունների ժողովածուն» (1899), եղել է «Գրանատ» հանրագիտական բառարանի խմբագրական կոլեգիայի անդամ:

*Երկ.* Гражданское право. Вещное право, ч. 1—2 (СПБ), 1898; Право в его основных моментах, в кн.. Сборник по общественно-юридическим наукам, в. 1, 1899; Свобода и ее гарантии, т. 1, СПБ, 1910.

**ՂԱՄՇԼՈՒ** (1978-ից՝ Զարթոնք), գյուղ Հայկական ՍՍՀ Հոկտեմբերյանի շրջանում, շրջկենտրոնից 12 *կմ* հարավ-արևելք: Սովետական տնտեսությունն զբաղվում է խորդենու մշակությամբ, բանջարաբուծությամբ և անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան,



Զարթոնք (Ղամշլու)

կապի բաժանմունք, կինո, մսուր-մանկապարտեզ, հիվանդանոց, խորդենու մշակման գործարան, ջերմոցային տնտեսություն: Ղ-ում է ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության եթերայուղատու կուլտուրաների գիտաարտադրական միավորման հայկական փորձակայանը:

**ՂԱՅԱԲԱՇ**, գյուղ Հայկական ՍՍՀ Վարդենիսի շրջանում, շրջկենտրոնից 8 *կմ* հարավ-արևելք: Կոլտնտեսությունն զբաղվում է հացահատիկի, կերային կուլտուրաների, ծխախոտի մշակությամբ և անասնապահությամբ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, կինո, կապի բաժանմունք, հեռախոսակայան, բուժկայան: Ղ. հայտնի է XVI—XVII դարերից:

**ՂԱՅԱՓԱ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի համանուն գավառում: 1909-ին ուներ 8 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Ղ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ և զոհվել են գաղթի ճանապարհին, Կամախի կիրճում:

**ՂԱՅԹԱՐՄԱ**, թաթարական ժողովրդական պար: Պարեղանակը մշակել է Ա. Սպենդիարյանը: Մշակման հիման վրա 1920—30-ական թթ. հայ պարուսույցները բեմադրել են կանացի պար: Լավագույն բեմադրություններից է Ս. *Լիսիցյանի* Ղ. Երևանի պարարվեստի ուսումնարանում:

*Ժ. Խաչատրյան*

**ՂԱՅՄԱՋ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Վանի վիլայեթի Բերկրի—Աբաղայի գավառում: 1909-ին ուներ 30 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Ղ-ի հայերը 1915-ի հուլիսին, ռուս. զորքերի հետ գաղթել և բնակություն են հաստատել Արևելյան Հայաստանում:

**ՂԱՆԱԼԱՆՅԱՆ** Արամ Տիգրանի (12.2. 1909, Ախալցխա), հայ սովետական բանագետ-բանասեր: ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1977), բան. գիտ. դ-ր (1970), գիտ. վաստ. գործիչ (1967): 1931-ին ավարտել է Երևանի համալսարանի պատմագրական ֆակուլտետը: Աշխատել է գիտ. հիմնարկներում, դասախոսել համալսարանում և այլուր: Ղ. զգալի վաստակ ունի բանահյուսական տեքստաբանության և առանձին ժանրերի գիտական հետազոտության բնագավառում. ուշագրավ են «Հայ շինականի աշխատանքի երգերը» (1937), «Սասունցի Դավիթ» (1939), «Հայ ժողովրդական հեքիաթներ» (1950), «Հայկական առածանի» (1951), «Ավանդապատում» (1969) գործերը: Ղ. զբաղվել է նաև հայ բանահյուսության ու գրականության փոխառնչությունների ուսումնասիրությամբ («Պռոշյանը և ժողովրդական բանահյուսությունը», 1938, «Աբովյանը և ժողովրդական բանահյուսությունը», 1941, «Ավ. Իսահակյանի ստեղծագործության ժողովրդական ակունքները», 1955, «Սայաթ-Նովայի ստեղծագործության ժողովրդական ակունքները», 1963, «Թումանյանը և ժողովրդական բանահյուսությունը», 1964) և հայագիտության, մասնավորապես՝ բանագիտության պատմության ու տեսության հարցերով («Մանուկ Աբեղյանն իբրև ֆոլկլորագետ»՝ «Գրական-բանասիրական հետախուզումներ», գիրք 1, 1946, «Հ. Օրբելին և հայ էպոսը»՝ «Տեղեկագիր ՀՍՍՀ ԳԱ», 1957, № 3, «Գարեգին Սրվանձտյանց», «Հայ նոր գրականության պատմություն», հ. 3, 1964, «Ն. Մառը և հայ բանահյուսությունը»՝ «Մառը և հայագիտության հարցերը» ժողովածուում, 1968 ևն): Գրառել և հրատարակել է «Սասնա ծռեր»-ի երկու պատում, Մ. Աբեղյանի և Գ. Աբովի հետ մասնակցել է «Սասունցի Դավիթ» էպոսի համահավաք բնագիրը կազմելուն, լույս է ընծայել «Հայ ժողովրդական բանահյուսություն» ձեռնարկի չորս պրակ (1945—46):

*Գրկ.* Հ ա ր ո ւ թ յ ո ւ ն յ ա ն Ս. Բ., Վաստակաշատ բանագետը, «ՊԲՀ», 1969, № 1:

*Ս. Հարությունյան*



Ա. Տ. Ղանալանյան

**ՂԱՆԱԼԱՆՅԱՆ** Հովհաննես Տիգրանի (19.2.1911, Ախալցխա), հայ սովետական գրականագետ: Բան. գիտ. դ-ր (1948), պրոֆեսոր (1948): 1937-ին ավարտել է Երևանի համալսարանը: 1946—77-ին եղել է Վ. Բրյուսովի անվ. ռուսաց և օտար լեզուների մանկավարժական ինստ-ի հայոց լեզվի և գրականության ամբիոնի վարիչը: Հեղինակ է «Ավետիք Իսահակյան» (1955, ռուս. 1975), «Պետրոս Դուրյան» (1957), «Միսաք Մեծարենց» (1958), «Վահան Տերյան» (1960), «Դանիել Վարուժան» (1961), «Մտերիմ դեմքեր» (1965) երկերի: Ուսումնասիրություններ ունի Վ. Բրյուսովի, Յու. Վեսելովսկու, Վ. Ջվյագինցևայի, Վ. Նեմիրովիչ-Դանչենկոյի և ռուս այլ գրողների մասին: Ռուսերեն լույս են տեսել «Ակնարկներ XIX—XX դդ. հայ քնարերգության» (1964), «Հայաստանը ռուս բանաստեղծների ստեղծագործություններում» (1972), «XVIII—XX դդ. Հայաստանի բանաստեղծները» (1976) գրքերը:

**ՂԱՉԱՂԱՆ** (1978-ից՝ Արևածագ), գյուղ Հայկական ՍՍՀ Թումանյանի շրջանում, Ձորագետի ձախ ափին, շրջկենտրոնից 15 *կմ* հարավ-արևմուտք: Տավարաբուծական-ծխախոտագործական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև պտղաբուծությամբ, անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կինո, կապի բաժանմունք, մանկապարտեզ, բուժկայան:



Արևածագ (Ղաչաղան)

**ՂԱՋԱՐԱԿԱՆ ԴԻՆԱՍՏԻԱ**, Կ ա ջ ա ր ա կ ա ն  դ ի ն ա ս տ ի ա, Իրանում, 1796—1925-ին: Հիմնել է թյուրք. ղաջար ցեղի առաջնորդ *Աղա-Մահմեդ խան Ղաջարը*, որը միջֆեոդալական պայքարում հաղթել է Զենդերի դինաստիային: Ղ. դ-ի մայրաքաղաքը Թեհրանն էր: Ղ. դ. արտահայտել է Իրանի ավատական ազնվականության շահերը և ձգտել է ստեղծել կենտրոնացված պետություն: Արևելյան Հայաստանը և Վրաստանը Ղ.դ-ի տիրապետության ներքո պահելու, ինչպես նաև հայ ու վրաց ժողովուրդների՝ Ռուսաստանին միանալու շարժումը խափանելու նպատակով Աղա-Մահմեդ խանը 1795-ին ու 1797-ին արշավել է Անդրկովկաս, կողոպտել ու ավերել այդ երկրամասը, հազարավոր հայերի ու վրացիների տեղահանել ու բռնի քշել Իրանի խորքերը: Անդրկովկասի ժողովուրդները համառ դիմադրություն են ցույց տվել զավթիչներին (հայերի դիմադրությունը Շուշիի 1797-ի պաշտպման ժամանակ): XIX դ. սկզբին Ռուսաստանի հետ անհաջող պատերազմների հետևանքով Ղ. դ. կորցրել է իր տիրույթներն (այդ թվում՝ Արևելյան Հայաստանը) Անդրկովկասում: XIX դ. Ղ. դ-ի շահերի օրոք ուժեղացել է օտարերկրյա կապիտալի ներթափանցումը Իրան, և երկիրը վերածվել է կիսագաղութի: Ղաջարական կառավարող վերնախավի շահագործումն ու կամայականությունները առաջ են բերել ժող. շարժումներ (տես *Բաբիների ապստամբություններ 1848—1852*, *Իրանական հեղափոխություն 1905—11*, 1918—22-ի ազգայինազատագրական շարժումները ևն), որոնք թուլացրել են Ղ. դ-ի իշխանությունը և պայմաններ ստեղծել նրա տապալման համար: 1925-ի հոկտ. 31-ին Իրանի V մեջլիսը որոշում կայացրեց Ղ. դ-ի տապալման մասին, իսկ դեկտ. 12-ին իշխանության գլուխ անցավ *Փահլավիների դինաստիան*:

Ղ. դ-ի ներկայացուցիչները՝

Աղա-Մահմեդ խան Ղաջար (1796—97), Ֆաթհ-Ալի շահ (1797—1834), Մոհամմեդ շահ (1834—1848), Նասր էդ-Դին շահ (1848—96), Մոզաֆֆար էդ-Դին շահ (1896—1907), Մոհամմեդ-Ալի շահ (1907—09), Ահմեդ շահ (1909—25):

*Վ. Բայբուրդյան*

**ՂԱՋԱՐՆԵՐ**, թյուրքական ցեղ Իրանում (մոտ 25 հզ., 1980): Հիմնականում բնակվում են Մազանդարանի Խազար-Ջերիբ հովտում և Վրկանի՝ դրան կից լեռնային շրջանում, մասամբ՝ Թեհրանում և մի քանի այլ քաղաքներում: XVIII դ. վերջին Ղ-ի հզորացած խավից առաջացավ *Ղաջարական դինաստիան* (1796—1925):

**ՂԱՍԱԲՅԱՆ** Միհրան (1870, Կեսարիա — 1910, Ֆիլադելֆիա), ամերիկահայ ռենտգենաբան: 1898-ին ավարտել է Ֆիլադելֆիայի բժշկավիրաբուժական կոլեջը: Որպես զինվորական բժիշկ մասնակցել է իսպանա-ամերիկյան պատերազմին: 1903—10-ին աշխատել է Ֆիլադելֆիայի հիվանդանոցում որպես ռենտգենաբան, միաժամանակ էլեկտրաբուժություն է դասավանդել բժշկավիրաբուժական կոլեջում: Ղ. մշակել է ռենտգենյան ճառագայթներով չարորակ ուռուցքների բուժման որոշ հարցեր, գրել աշխատություն, որն Ամերիկայի բժշկ. ուսումնական հաստատություններում օգտագործվել է որպես դասագիրք: Ղ. եղել է Նյու Յորքի բժշկ. լեգալ ընկերության նախագահ և Ամերիկյան էլեկտրաթերապևտների ընկերության փոխնախագահ:

**ՂԱՎԱԽԱՆ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտունու շրջանում, շրջկենտրոնից 24 *կմ* արևմուտք: Կոլտնտեսությունն զբաղվում է անասնապահությամբ, հացահատիկի և բանջարեղենի մշակությամբ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, կինո, կենցաղսպասարկման տաղավար: Ղ-ում է Ս. Աստվածածին եկեղեցին (XIX դ.):

**ՂԱՎՐԱՋ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Սեբաստիայի վիլայեթի համանուն գավառում: 1914-ին ուներ մոտ 1600 (200 ընտանիք) հայ բնակիչ. զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ, արհեստներով, առևտրով: Գյուղում կար եկեղեցի (Ս. Փրկիչ) և վարժարան (Վռամշապուհյան): Բնակիչների մեծ մասը զոհվել է հայրենի գյուղում, 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Փրկվածները տեղափոխվել են Արևելյան Հայաստան:

**ՂԱՎՈՒՇՈՒՂ**, գյուղ Հայկական ՍՍՀ Եղեգնաձորի շրջանում, շրջկենտրոնից 16 *կմ* հյուսիս-արևելք: Ղ-ով է անցնում Եղեգնաձոր—Գյուլլիդուզ ավտոճանապարհը: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև ծխախոտի, հացահատիկի, կերային կուլտուրաների մշակությամբ, պտղաբուծությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կապի բաժանմունք, կինո, կենցաղսպասարկման տաղավար, բուժկայան: Գյուղում և շրջակայքում պահպանվել են Կնեվանքը (վերակառուցված XVII դ.) և Գյունեյ վանքը՝ կից գերեզմանոցով (XII—XIII դդ.):

Ղավուշուղ



**ՂԱՎՈՒՐՄԱ**, տնայնագործական եղանակով պահածոյացված միս: Տավարի կամ ոչխարի միսը լվանալուց հետո թողնում են ծակոտկեն ամանի մեջ՝ մինչև լավ քամվելը: Այնուհետև եփում են, կրկին քամում, ապա, անջատելով խոշոր ոսկորները, միսը տապակելով կարմրացնում են մսաջրի երեսից հավաքած յուղի մեջ, լցնում կավե (կճուճ, կարաս) կամ արծնապատ ամանի մեջ, լավ սեղմում և վրան լցնում են հալած տաք յուղ: Ղ. հիմնականում գործածվում է ձմռանը:

*Լ. Պետրոսյան*

**ՂԱՐԱԲԱՂ** (ղարա—սև, բաղ—այգի), տեղանուն, որը XIV դարում տրվել է Կուրի աջ ափին փռված Մեծ Հայքի երկու նահանգների՝ *Ուտիքի* և *Արցախի* տարածքին: Հետագայում Ղ. անունը տարածվել է ավելի փոքր երկրամասի վրա: Ներկայումս Ղ. ընդգրկում է հին Արցախի մի մասը (Առբբ. ՍՍՀ *Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզը*, Մուխանք-Մուղանի դաշտը և Թարթառ-Տրտուի ձախ ու աջ ափերին փռված Շահումյանի, Աղդամի ու Բարդայի շրջանները, ինչպես նաև Կասում-Իսմայիլիի՝ նախկին Թարթառի շրջանի հվ. կեսը): Պարսիկ պատմիչ Համդալլահ Ղազվինին, պատմելով 1334—44-ի դեպքերը, նշում է «Առանի Ղարաբաղ» կամ «Առան-Ղարաբաղ» անվանումը: «Առան»-ի ու «Ղարաբաղ»-ի այս նույնացումից ենթադրվում է, որ սկզբնապես Ղ. է կոչվել նախկինում «Առան» անվամբ հայտնի ամբողջ հայ Աղվանքը՝ Կուրի աջափնյակը: XIII—XIV դդ. վրաց. ժամանակագրությունում վկայվում է, որ Ղ. գործածական է դարձել հենց այդ ժամանակներում: Ղ. հիշատակող առաջին հայ հեղինակը Թովմա Մեծոփեցին է, որի տեղեկության համաձայն Ղ-ի մեջ է մտել նաև Ուտիքը:

Ղ. անվան առայժմ հայտնի առաջին բացատրությունը կամ հայերեն տարբերակը հիշում է տեղացի պատմիչ Հովհաննիսիկ Ծարեցին (XVI դ. վերջ — XVII դ. սկիզբ), որը Ղ-ին համազոր գործածում է «Սև այգի» բառացի թարգմանությունը:

Այժմ լայն տարածում ունեն Լեռնային Ղ. և Դաշտային Ղ. անունները, որոնցից առաջինը Լեռնային Ղարաբաղի ԻՄ-ն է, երկրորդը՝ դրանից արլ. ընկած Ղարաբաղյան կամ Մուղանի դաշտը:

*Գրկ.* Թ ո վ մ ա Մ ե ծ ո փ ե ց ի, Պատմութիւն Լանկ-Թամուրայ և յաջորդաց իւրոց, Փարիզ, 1860: Վրաց ժամանակագրություն, Ե., 1971: Ո ւ լ ո ւ բ ա բ յ ա ն Բ. Ա., Խաչենի իշխանությունը X—XVI դարերում, Ե., 1975:

*Բ. Ուլուբաբյան*

**«ՂԱՐԱԲԱՂ»**, գրական-հասարակական եռօրյա թերթ: Լույս է տեսել 1911—12-ին, Շուշիում: Խմբագիր-հրատարակիչ՝ Ն. Յարամիշյան (փաստացի՝ Վրթ. Փափազյան): Լուսաբանել է աշխատավորության տնտ. վիճակը, անդրադարձել հողազրկությանն ու անգրագիտությանը, մեծ տեղ հատկացրել մատաղ սերնդի դաստիարակությանը: «Քաղաքական», «Վերջին լուրեր» բաժինները տեղեկացրել են աշխարհի քաղ. իրադարձությունների մասին, «Լրատու» բաժինը՝ Շուշիի նորություններին: «Ղ.» անդրադարձել է նաև Ռուսաստանի և հայաբնակ այլ վայրերի պարբերական հրատարակությունների նյութերին: Տպագրել է բանաստեղծություններ, պատմվածքներ, Վրթ. Փափազյանի «Գրական ակնարկներ» հոդվածաշարը, վերլուծականներ՝ Հ. Հովհաննիսյանի, Գ. Դոդոխյանի, Ա. Իսահակյանի ստեղծագործությունների մասին:

**ՂԱՐԱԲԱՂԻ ԲԱՐԲԱՌ**, հայերենի բարբառ: Ըստ ձևաբանական դասակարգման պատկանում է «ում» ճյուղին, ըստ բազմահատկանիշ վիճակագրական դասակարգման՝ արլ. խմբակցության Ղարաբաղ—Շամախիի կամ ծայր հս-արլ. միջբարբառախմբին: Խոսվում է Լեռնային Ղարաբաղի ԻՄ-ում և նրան սահմանակից շրջաններում, ինչպես նաև Հյուսիսային Կովկասի և Միջին Ասիայի հայաբնակ վայրերում: Ղ. բ. հարուստ է ենթաբարբառներով ու խոսվածքներով: Ձայնավոր հնչյուններն են՝ **ա**, **ա̈**, **ը**$^{է}$, **է**, **ի**, **ի̀**, **ը**, **ու**, **ու̈**, **օ**, **օ̈**: Ունի երկաստիճան ձայնեղազուրկ բաղաձայնական համակարգ. բառասկզբի դիրքում գրաբարի ձայնեղ պայթականների և կիսաշփականների դիմաց խուլեր են: Առկա են **գ**$^{յ}$, **կ**$^{յ}$, **ք**$^{յ}$ քմայինները, բացակայում է **ֆ** հնչյունը: Ձայնավորների և երկբարբառների հնչյունափոխության հիմնական դեպքերն են՝ **ա**>**ա̈**, **է** (բակ>>պա̈կ, պէկ), **ի**>**է**, **ը**$^{է}$ (միս>մը$^{է}$ս, հինգ>>հէնգ$^{յ}$), **ու**>**օ**, **ու̈** (տուն>տօն, բուրդ>>պու̇րթ), **ո**>**ու**, **ö**, **վը**$^{է}$ (ախոռ>ախուռ, բողկ>պöղկ, որդի>վը$^{է}$րթի), **այ**>**ա̈**, **է** (հայր>հա̈ր, այս>էս), **իւ**>**ու̈** (սիւն>>սու̇ն), **ոյ**>**ու̈** (թոյլ>թու̇լ): Շեշտը վերջընթեր է: Գոյականի հոգնակիակերտ մասնիկներն են՝ **էր**, **նէ**, **ք**$^{յ}$: Հոլովները հինգն են. անորոշ սեռականը կազմվում է **ու** (սարու), որոշյալը՝ **էն**, **ին** (սարէն, սարին) թեքույթներով, բացառական, գործիական հոլովներն ունեն համադրական ու վերլուծական կազմություններ (մա՛րթան, մարթին անա, մարթին նը$^{է}$ստա, մարթավ, մարթու անավ, մարթու նը$^{է}$ստավ): Պահպանվել են հին հայերենի անձներական թվականները (երկոքեան-ըրկօքան): Բայց ունի **է**, **ի**, **ա** խոնարհումները. ապառնի դերբայը կազմվում է **ական** (**ան**), վաղակատարը՝ **ալ**(**էլ**) ձևույթներով. չկա ժխտական դերբայաձև: Օժանդակ բայի անցյալի ձևերն են՝ **ի**, **իր**, **ար**. **ինք**$^{յ}$ (**իք**$^{յ}$), **իք**$^{յ}$, **ին**: Հարկադրական եղանակն արտահայտվում է՝ ա. **պիտի**, **բիդի**, **բէդմա** եղանակիչներով (բէդմա խօսիմ), բ. խոնարհվող **պիտիմ** բայով ու անորոշ դերբայով (թակէլ պիտիմ, թակէլ պիտիս): Ժխտական խոնարհման դեպքում օժանդակ բայը և (**հ**)**ու̈չ**, (**վ**)**ու̈չ**, **վը**$^{է}$**չ** ժխտական, **մը**$^{է}$**ր**, **մը**$^{է}$**լ**, **մի**(**լ**), **մը**$^{է}$**ք**, **միք** արգելական մաս-

նիկները դրվում են ետադաս (կʲա̈մ ում-կʲա̈մ չում, քʲինացէ-քʲինացէ վռնչ, աhիմ-աhիմ ռնչ, կըկարթիմ-կարթիլ չըմ, մուտա՛ց-մուտա՛նու մըէր, մուտա՛ցէքʲ-մուտանալ մըէքʲ):

*Գրկ.* Ա ճ ա ռ յ ա ն Հ., Քննություն Ղարաբաղի բարբառի, Վաղ-պատ, 1901: Ղ ա ր ի բ յ ա ն Ա., Հայ բարբառագիտություն, Ե., 1953: Դ ա վ թ յ ա ն Կ., Լեռնային Ղարաբաղի բարբառային քարտեզը, Ե., 1966: Ջ ա հ ու կ յ ա ն Գ., Հայ բարբառագիտության ներածություն, Ե., 1972: *Ա. Խաչատրյան*

**ՂԱՐԱԲԱՂԻ ԲԱՐՁՐԱՎԱՆԴԱԿ**, գտնվում է Հայկական ՍՍՀ-ում և Ադրբեջանական ՍՍՀ-ում, Զանգեզուրի և Ղարաբաղի լեռնաշղթաների միջև: Որոտան, Հագարու և Թարթառ գետերի ջրբաժանն է: Հս-արմ-ում ձուլվում է Վարդենիսի լեռնազանգվածին: Տարածվում է հս-արմ-ից հվ-արլ. (մոտ 120 *կմ*): Դեպի արլ. նեղանում և վերածվում է ցածրադիր սարավանդի: Առավելագույն լայնությունը մոտ 50 *կմ* է (հս-ում): Ղ. բ-ի հս. մասը բարձրադիր սարահարթ է՝ 2800—3200 *մ* բարձրությամբ: Հս-արմ-ում և կենտրոնական մասում բլրաթմբային մակերևույթի բնորոշ են բազմաթիվ հրաբխային կոները: Խոշոր հրաբխային զանգվածները (Ծղուկ, 3581 *մ*, Իշխանասար, 3552 *մ*) գտնվում են բարձրավանդակի կենտրոնական մասում և առաջացնում են Որոտան ու Հագարու գետերի գլխավոր ջրբաժանը: Ղ. բ-ին բնորոշ են նաև փոքր ու փակ գոգավորությունները (շատերը վերածվել են լճերի՝ Սև, Ալ, Մեծ Փորակ, Փոքր Փորակ են) ու քարացրոնները (Կարկառ են): Ղ. բ. հս-արլ-ում Միխթոքյանի բարձրադիր (Դալիդաղ լեռ, 3616 *մ*) և Կարճ (45 *կմ*) լեռնաշղթայով միանում է Ղարաբաղի լեռնաշղթային: Միխթոքյան լեռնաշղթան ունի ծալքաբեկորավոր կառուցվածք, կազմված է նստվածքային ու հրաբխածին ապարներից և մասնատված է Հագարուի ու Թարթառի վտակների խոր հովիտներով: Ղ. բ-ի հրաբխային մասի հիմքը կազմված է կավճի և պալեոգենի ծալքավոր հրաբխածին-նստվածքային և հրաբխային ապարներից՝ ծածկված մինչև 1500 *մ* հաստության երիտասարդ լավաներով: Ղ. բ-ի հվ-արմ-ում և հվ-ում ձգվում են Անգեղակոթի, Ցոռնասարի, Եռաբլրի լավային և Գորիսի ու Տեղի հրաբխածին-բեկորատված ապարներից կազմված սարավանդները: Իշխանասար և Ծղուկ լեռնազանգվածներում պահպանվել են սառցապատման հետքեր: Ղ. բ-ում կան բազալտի, պեռլիտի, խարամի հանքավայրեր:

Ղ. բ-ից սկիզբ են առնում Որոտան, Արփա, Հագարու, Թարթառ գետերն ու նրանց բազմաթիվ վտակները: Ղ. բ-ում արտահայտված է կլիմայի և հողաբուսական ծածկույթի ուղղաձիգ գոտիականությունը: Հուլիսի միջին ջերմաստիճանը 20°C-ից (Եռաբլրի սարավանդ) 12°C է (բարձրադիր սարավանդներ), հունվարինը՝ —2°C-ից (Գորիս) —14°C (բարձրադիր վայրեր): Տարեկան տեղումները 400—800 *մմ* են: Ձմռանը գոյանում է կայուն ձյունածածկ: Ղ. բ-ի ցածրադիր և միջին բարձրության սարավանդներին բնորոշ է սակավահումուս կարբոնատային հողերի և կրազերծված սևահողերի վրա չոր լեռնատափաստանային և տափաստանային բուսածածկույթը (սիզախոտ, ցորնուկ, շյուղախոտ են): Ավելի բարձր, տափաստանային գոտին փոխանցվում է ալպյան գոտուն, որտեղ լեռնամարգագետնային հողերի և ճմակալված դարչնագույն հողերի վրա տարածված են ալպյան գորգերը: Անտառներն առանձին պուրակներով տարածվում են գետահովիտներում: Տափաստանային գոտում զբաղվում են հացահատիկի մշակությամբ, ալպյան գոտին ծառայում է իբրև արոտավայր:

**ՂԱՐԱԲԱՂԻ ԼԵՌՆԱՇՂԹԱ**, Փոքր Կովկասի համակարգի ծայր արևելյան մասը Ադրբեջանական ՍՍՀ-ում, ձգվում է գրեթե միջօրեականի ուղղությամբ՝ Թարթառից մինչև Արաքսի հովիտը: Կազմված է յուրայի և կավճի նստվածքային ու հրաբխային ապարներից, տեղ-տեղ՝ ուլտրահիմքային ներժայթուկներից: Ամենաբարձր հատվածը միջին մասում է՝ Շուշիի մոտ (Մեծ Քիրս, 2725 *մ*): Լեռնաշղթայի կատարային մասը հս-ում ժայռոտ է, միջին մասում՝ նեղ և սրածայր, հվ-ում մի քանի լեռնաբազուկներով աստիճանաբար ցածրանում է դեպի Արաքսի հովիտը: Արմ. լանջերը կարճ են, չոր և էրոզիոն մասնատված, կան կարստային, սողանքային երևույթներ: Հայտնի է Ազոխի քարայրը նեոանդերթալյան մարդու բրածո մնացորդներով: Բուսականությունը ստորին գոտում ներկայացված է ֆրիգանային տիպով, շիբլյակի համակեցություններով և տափաստաններով: Միջին բարձրությունները, հատկապես արլ. լանջերը, ծածկված են կաղնու, հաճարի, բոխու անտառներով, որոնք դեպի հվ. փոխվում են չորասեր նոսր անտառների, 2100—2300 *մ*-ից բարձր ենթալպյան և ալպյան մարգագետիններ են:

**ՂԱՐԱԲԱՂԻ ՌՈՒՍՏԱ ՂԱՄԲԱՐ** (1830-ական թթ., Շուշի — 1905, Շուշի), նկարիչ: Ապրել և ստեղծագործել է Շուշիում: Նկարազարդել է տեղի մեծահարուստների ապարանքները: Զգալի գործ է կատարել նաև Նուխիի Շեքի խաների պալատում (XIX դ. 90-ական թթ.—1902): Նրա ձևավորումներին բնորոշ է միասնական գեղարվեստական կերպավորումը, որտեղ գերակշռողը բուսական զարդամոտիվներն են: Պանոների գունային շքեղությունը շեշտված է սլացիկ նոճիների զրնգուն կանաչով: Որմնանկարներում երբեմն տեղադրել է պարսկ. ստեղծագործություններին բնորոշ փասիանի կամ սիրամարգի նրբաջեղ պատկերներ: Սենյակների առաստաղների, դռների, պատերի ու վառարանների ձևավորման ոճը, գունային բազմազան համադրությունները հիշեցնում են արլ. գորգերի գունա-պլաստիկական հարըստությունը: Ղ. Ռ. Ղ. իր աշակերտների հետ նորովի է շարունակել դեկորատիվ գեղանկարչության Հովնաթանյանների ավագ սերնդի ստեղծած ավանդույթները:
*Մ. Ղազարյան*

**ՂԱՐԱԲՈՒԼԱՂ**, գյուղ Հայկական ՍՍՀ Ամասիայի շրջանում, Ղարախան գետակի աջ ափին (Արփի լճի մոտ), շրջկենտրոնից 33 *կմ* հյուսիս-արևմուտք: Միավորված է Կուզիքենդի կաթնաանասնապահական սովետական տնտեսության հետ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, բուժկայան:

**ՂԱՐԱԲՈՒԼԱՂ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Ասկերանի շրջանում, շրջկենտրոնից 44 *կմ* հարավ-արևելք: Կոլտնտեսությունն զբաղվում է այգեգործությամբ, հացահատիկային և բանջարաբոստանային կուլտուրաների մշակությամբ, անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, գրադարան, ակումբ, կինո, բուժկայան, փոստի բաժանմունք: Ղ-ում է Ս. Աստվածածին եռանավ բազիլիկատիպ եկեղեցին:

**ՂԱՐԱԳՅՈԶ** (թուրք. karagöz — սև աչքեր), ստվերների տիկնիկային թատրոնի հիմնական ներկայացման գլխավոր հերոսը: Նույն անունով է կոչվում նաև ներկայացումը, որի գործողությունը պտտվում է Ղ-ի շուրջ: Տարբեր անուններով տարածված է աշխարհում, հատկապես՝ Արևելքում: Կարծիք կա, թե Ղ. թուրք. երևույթ է, սակայն փաստերով, այն արլ. մշակույթի արդյունք է՝ կապված ոգին ստվերի



Ղարագյոզ

ձևով պատկերացնելու մտածելակերպի հետ: Արևելքում ունեցել է ծիսական նշանակություն և կապվել մեռնող ու հարություն առնող աստվածության պաշտամունքի հետ: Հայկ. միջնադարում Ղ. լայն տարածում է ունեցել հատկապես վերջին հարյուրամյակներում: Քանի որ հայերի մոտ ոգու պաշտամունքը շատ հին է, ապա հնարավոր է, որ Ղ. նույնպես ունենա հնագույն ծագում: Հայ վերջին «Ղ. խաղացողը»՝ 99 տարեկան Խաչատուր Թումասյանը, դեռևս ողջ է (1981):
*Ժ. Խաչատրյան*

**ՂԱՐԱԳՅՈԶՅԱՆ** (Կարակոզով) Արմենակ Մկրտչի (1890, Գորիս — 1937), կուսակցական, պետական գործիչ: ՍՄԿԿ անդամ՝ 1917-ից: Ավարտել է (1917) Պետրոգրադի համալսարանի բնագիտական ֆակուլտետը: Հեղափոխական գործունեության մեջ ներգրավվել է ուսանողական տարիներից: 1917-ին ձերբակալվել և արտաքսվել է Զանգեզուր: 1917—20-ին, լինելով գավառի բոլշևիկյան կազմակերպության ղեկավարներից, կազմակերպական ու պրոպագանդիստական լայն գործունեություն է ծավալել Գորիսում և Շուշիում: Ադրբեջանում սովետական կարգեր հաստատվելուց հետո Ղ. ընտրվել է Ադրբեջանի կոմկուսակցության Կենտկոմի անդամ: Նշանակվել է 11-րդ կարմիր բա-

Ա. Մ. Ղարագյոզյան

նակի Ղարաբաղ—Զանգեզուրի գործերի ժամանակավոր արտակարգ լիազոր: 1921—22-ին եղել է ՀՍՍՀ Ժողտնտխորհի նախագահ, իսկ ապա՝ Ժողկոմխորհի նախագահի տեղակալ: 1922-ին նշանակվել է Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Ժողկոմխորհի նախագահ: 19[illegible]—34-ին ղեկավար աշխատանք է տա[illegible]ել ՍՍՀՄ ջրային տնտեսության ժող. կոմիսարիատում: 1934-ից Ղ. Ադրբեջանի բամբակագործական տրեստի կառավարիչն էր: Ընտրվել է կուսակցության Հայաստանի, Ադրբեջանի Կենտկոմների, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի, Անդրֆեդերացիայի երկրկոմի, ԱՍՍՀ, ԱՍՖՍՀ և ՍՍՀՄ Կենտգործկոմների կազմում:

*Ա. Ղուբասարյան*

**ՂԱՐԱԳՅՈՒԼՅԱՆ** Արշավիր Հարությունի (26.12.1889, Կարս —9.5.1969, Երևան), հայ սովետական դրամատուրգ, թարգմանիչ: ՍՄԿԿ անդամ 1920-ից: Սովորել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանում, Թիֆլիսի երաժշտական դպրոցում (1904—07): Աշխատել է տարբեր բնագավառներում (մանկավարժ, ջութակահար, բուժակ, խմբագրական աշխատող ևն): Գրել է դրամաներ («Կոմսոմոլ Աստղիկը», 1929, «Շուշանաձորում», 1930, «Փոքրիկ թյուրիմացություն», 1936, «Գաղտնի գործիչ», 1959), որոնք բեմադրվել են Անդրկովկասի հայկ. թատրոններում: Թարգմանել է Բ. Գորևի «Օգյուստ Բլանկի» (1939), Վ. Կատաևի «Սպիտակին է տալիս առագաստը մենավոր» (1948) երկերը:

*Երկ*. Պիեսներ, Ե., 1966:

**ՂԱՐԱԴԱՂԻ ԲԱՐԲԱՌ**, հայերենի բարբառ: Ըստ ձևաբանական դասակարգման պատկանում է «ս» ճյուղին (առանձին խոսվածքներ պատկանում են «ում» ճյուղին), ըստ բազմահատկանիշ վիճակագրական դասակարգման *Ղարաբաղի բարբառի* ենթաբարբառներից է: Թե՛ բառապաշարով, թե՛ քերականությամբ միջին դիրք է գրավում Մեղրու և Ղարաբաղի բարբառների միջև: Խոսվում է Իրանում՝ Արաքս գետի մերձափնյա գյուղերում: Ունի եռաստիճան անտեղաշարժ բաղաձայնական համակարգ: Շեշտը վերջընթեր է: Բացի գրական հայերենի հնչույթներից, առկա են քմային **ӓ**, **ö**, **ü**, միջին շարքի **ը$^{է}$**, **ը̂** ձայնավորները, **գ$^{յ}$**, **կ$^{յ}$**, **ք$^{յ}$** բաղաձայնները, չունի **ֆ**: Ղ. բ-ում գրաբարի ձայնավորների և երկբարբառների հնչյունափոխություններից են. **ա>է** (բան>բէն), **ա>ӓ** (ծափ>ծӓփ), **ե>ը$^{է}$**, **ը̂** (տաշեղ>տաշը$^{է}$ղ, աներ>հանը̂ր), **ե>ի** թել>թիլ, ես>իս), **ի>է**, **ը$^{է}$** (վիզ>վէզ, միս>մը$^{է}$ս), **ո>ու** (կեղտոտ>յէխտուտ), **ո>վօ**, **վը$^{է}$**, **վը̂** (որդի>վօրթի, որս>վը$^{է}$րս, որ>վը̂ր), **ու>օ** (տուն>տօն), **ու>ü** (բուրդ>բüրթ), **այ>է** (այծ>էծ), **իւ**, **ոյ>ü** (արիւն>արüն, բոյն>բüն): Հոգնակիակերտ մասնիկներն են՝ **ը$^{է}$ր**, **ը̂ր**, **էր** (բէրցը$^{է}$ր, հացը̂ր, չիրէր), **նէ**, **օտենք$^{յ}$** (խընձöրնէ, վըխչըրօտէնք$^{յ}$): Ունի 5 հոլովաձև (քար, քարու||քարեն, քարէն անէ, քարավ, քարըմը), բայի 2 լծորդություն՝ **ի**, **ա**: Անցյալի ձևերը կազմվում են **լӓլ** մասնիկով (գ$^{յ}$öլիս ըմ լӓլ), ապառնի դերբայը՝ **ական** ածանցով (ըսըլական ըմ): Վաղակատար ժամանակաձևերն արտահայտվում են հարակատար դերբայով (գ$^{յ}$իրӓծ ըմ): Անցյալ կատարյալի պարզ ձևերը բացակայում են. նրա իմաստն արտահայտվում է վաղակատար դերբայով և օժանդակ բայի ներկայի ձևերով (նըստալ ըմ): Ըղձական և պայմանական եղանակների անցյալ ժամանակաձևերը կազմվում են անորոշ դերբայի օգնությամբ (մընալ ըմ լӓլ), պարզ բայաձևերի ժխտականը՝ ետադաս **վըչ** մասնիկով (ասըմ վըչ): Հարկադրականի եղանակիչներն են **պետկ$^{յ}$ա**, **պետք$^{յ}$ӓմ**, **պետӓ**, արգելական հրամայականի մասնիկն է **մին** (մէք$^{յ}$), որն ավելանում է անորոշ դերբային (մընալ մին, մընալ մէք ):

*Գրկ*. Ղ ա ր ի բ յ ա ն Ա., Հայ բարբառագիտություն, Ե., 1953:

*Ա. Խաչատրյան*

**ՂԱՐԱԴԱՂԻ ԼԵՌՆԵՐ**, Հ ա յ կ ա կ ա ն լ ե ռ ն ե ր, Իրանի հյուսիս-արևմուտքում, Միշոուդաղ լեռնային համակարգի կենտրոնական հատվածը Արաքսի աջ ափին, Ուրմիա լճից հյուսիս-արևելք: Աղեղնաձև է, ուռուցիկ մասով ուղղված դեպի հվ.: Բարձրությունը մինչև 2941 *մ* է (Սուրաջար թեփե լեռ):

**ՂԱՐԱԴԱՂՑԻ** Պողոս, Ն ե ր ս ի ս յ ա ն Պ ո ղ ո ս Ղ ա ր ա դ ա ղ ց ի, Ղ ա ր ա բ ա ղ ց ի Պ ո ղ ո ս, Պ ո ղ ո ս Ս և ա կ ի ր Ա ր ե վ ե լ ց ի, Պ ո ղ ո ս Վ ա ր դ ա պ ե տ [մոտ 1790, գ. Մուժումբար (Թավրիզի մոտ)— մոտ 1850—60], հայ մանկավարժ: Նախնական կրթությունն ստացել է Ղարաբաղի Գանձասար վանքում՝ Հովսեփ Տեր-Ավագյան Արցախեցու մոտ, ապա սովորել է Տաթևի վանքում, 1810—17-ին՝ Կ. Պոլսում: 1818—19-ին դասավանդել է Էջմիածնի վանքի դպրոցում, 1821—22-ին մասնավոր դասեր է տվել Շուշի քաղաքում: 1822-ի սեպտեմբերին Ներսես Աշտարակեցու խորհրդով փոխադրվել է Թիֆլիս և ուսուցչություն արել սկզբում՝ Տափիթաղի վանքի խցերում, իսկ 1824—27-ին՝ Ներսիսյան դպրոցում: Հաջորդ 5 տարիներն անց է կացրել Շուշիում, որտեղ դասավանդել է Բազելյան քարոզիչների դպրոցում: 1829-ին Շուշիում լույս է տեսել նրա «Համառօտութիւն հայկական քերականութեան» ձեռնարկը: Այնուհետև Ղ. ուսուցչություն է արել Թավրիզում, Ագուլիսում: Եղել է առաջադեմ ու ճանաչված մանկավարժ: Դասավանդել է հայոց լեզու, ճարտասանություն, տրամաբանություն: Նրա աշակերտներից են Մեսրոպ Թաղիադյանը, Խաչատուր Աբովյանը, Ստեփանոս Նազարյանցը, Առաքել Արարատյանը:

**ՂԱՐԱԻՍԱ**, գյուղ Հայկական ՍՍՀ Կալինինոյի շրջանում, շրջկենտրոնից 10 *կմ* հարավ-արևմուտք: Միավորված է Իլմազլուի անասնապահական սովետական տնտեսության հետ: Ունի տարրական դպրոց, ակումբ, գրադարան, բուժկայան: Ղ-ից արմ. պահպանվել են եկեղեցի և գերեզմանոց:

**ՂԱՐԱԼԱՐ** (1978-ից՝ Ա ր ա լ ե զ), գյուղ Հայկական ՍՍՀ Արարատի շրջանում, շրջկենտրոնից 8 *կմ* հարավ-արևմուտք: Կոլտնտեսությունն զբաղվում է այգեգործությամբ, բանջարաբուծությամբ և անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կինո, կապի բաժանմունք, կենցաղսպասարկման տաղավար, հեռախոսակայան, բուժկայան: Հիմնադրել են Վանի Լեզք գյուղից գաղթածները, 1915-ին:

Արալեզ (Ղարալար)

**ՂԱՐԱՂԱԼԱ**, գյուղ Հայկական ՍՍՀ Կալինինոյի շրջանում, շրջկենտրոնից 12 *կմ* հարավ-արևմուտք: Միավորված է Իլմազլուի անասնապահական սովետական տնտեսության հետ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, բուժկայան: Գյուղում և շրջակայքում պահպանվել են ամրոց (միջնադար), գյուղատեղիներ, մատուռ, դամբարաններ (մ. թ. ա. II—I հազարամյակ), քարայրեր, կամուրջ, ջրաղացներ, գերեզմանոց:

**ՂԱՐԱՂԱՅԱ**, գյուղ Հայկական ՍՍՀ Եղեգնաձորի շրջանում, շրջկենտրոնից 25 *կմ* հյուսիս-արևելք: Միավորված է Գյուլլիդուզի անասնապահական սովետական տնտեսության հետ: Ունի տարրական դպրոց, ակումբ, գրադարան:

Ղարաղայա

**ՂԱՐԱՂԱՅԱ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Մանազկերտի գավառում: 1909-ին ուներ 50 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկագործությամբ և անասնապահությամբ: Ղ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է աքսորի ճանապարհին:

**ՂԱՐԱՂԱՅԱ**, գյուղ Հայկական ՍՍՀ Կրասնոսելսկի շրջանում, Գետիկի ձախ ափին,

շրջկենտրոնից 27 *կմ* հյուսիս-արևմուտք: Միավորված է Մեշաքենդի անասնապահական սովետական տնտեսության հետ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, կինո, կապի բաժանմունք, բուժկայան:

**ՂԱՐԱՂՇԼԱՂ** (1978-ից՝ Դ ո ս տ լ ու գ), գյուղ Հայկական ՍՍՀ Մասիսի շրջանում, Հրազդանի աջ ափին, շրջկենտրոնից 8 *կմ* հյուսիս-արևմուտք: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև բանջարաբուծությամբ, կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կապի բաժանմունք, կինո, կենցաղսպասարկման տաղավար, մսուր-մանկապարտեզ, բուժկայան:



Դոստլուգ (Ղարաղշլաղ)

**ՂԱՐԱՆՖԻԼՅԱՆ** (Գ ա ր ա ն ֆ ի լ յ ա ն) Դովլաթ Գևորգի (1897, Զեյթուն — 1.3.1952, Երևան), հայ սովետական նկարիչ-գորգագործ: 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ աքսորվել է Դեյր էզ-Զոր: 1919—23-ին աշխատել է Հալեպում, գորգի արհեստանոցում, միաժամանակ սովորել տեղի գեղարվեստական դպրոցի արլ. մանրանկարչության բաժնում: 1924-ին ներգաղթել է Սովետական Հայաստան, հիմնադրել գորգի առաջին արհեստանոցը: Ղ. սովետական գորգարվեստում դիմանկարային ժանրի սկզբնավորողն է: Հեղինակ է 22 դիմանկարային և մի քանի տասնյակ զարդանկարային գորգերի: Լավագույն աշխատանքներից են՝ Մ. Գորկու (1932, նվիրել է Մ. Գորկուն), Ֆ. Ռուզվելտի (ՍՍՀՄ կառավարության պատվերով, 1935, ցուցադրվել է Նյու Յորքի միջազգային ցուցահանդեսում, այժմ գտնվում է նախկին պրեզիդենտի տուն-թանգարանում) գորգ-դիմանկարները: Մեծ մասամբ սովետական պետության ղեկավարների դիմանկարներով գորգերը գտնվում են ՍՍՀՄ տարբեր քաղաքների (Մոսկվա, Լենինգրադ, Բաքու, Թբիլիսի, Երևան) թանգարաններում:

**ՂԱՐԱՉԻՄԱՆ**, գյուղ Հայկական ՍՍՀ Ղափանի շրջանում, շրջկենտրոնից 4 *կմ* հյուսիս-արևելք: Միավորված է Սյունիքի անասնապահական սովետական տնտեսության հետ, ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, բուժկայան:

Ղարաչիման



**ՂԱՐԱՉԻՆ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Խարբերդի վիլայեթի Խամանուն գավառում: 1914-ին ուներ 26 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Գյուղում կար եկեղեցի (Ս. Մինաս) և դպրոց: Ղ-ի հայերը տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է բռնագաղթի ճանապարհին:

**ՂԱՐԱՋՅԱՆ** Գևորգ Հարությունի (Ս. Տ. Ա ր կ ո մ ե դ) (1861, Թիֆլիս — 1936, Երևան), Անդրկովկասի բանվորական, սոցիալ-դեմոկրատական շարժման գործիչ, հայ առաջին մարքսիստներից, գիտական սոցիալիզմի պրոպագանդիստ: Սովորել է Ներսիսյան դպրոցում (1870—1883) և Ժնևի համալսարանի սոցիոլոգիական-քաղաքական գիտությունների բաժնում: 1882—83-ին մասնակցել է ազգային-նարոդնիկական ուղղության անլեգալ «Անդրկովկասում հայ անդրանիկ հեղափոխական խմբակի» ստեղծմանը: 1886-ին մեկնել է արտասահման (Ֆրանսիա, Շվեյցարիա): Ուսանողական շրջանում թղթակցել է Թիֆլիսի «Մշակ» թերթին՝ եվրոպական երկրների սոցիալ-քաղաքական շարժումներին նվիրված հոդվածներով: Ժնևում ծանոթացել ու սերտ կապեր է հաստատել Գ. Վ. Պլեխանովի և «Աշխատանքի ազատագրություն» խմբակի մյուս գործիչների հետ, համակվել գիտական սոցիալիզմի գաղափարներով: 1887-ին ֆրանսերենից թարգմանել է Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Կոմունիստական կուսակցության մանիֆեստը», որը, սակայն, չի հրատարակվել: 1889-ին վերադարձել է Թիֆլիս: 1889—95-ին հասարակագիտական առարկաներ է դասավանդել Վերին Ագուլիսի, Երևանի, Շուշվա թեմական և Թիֆլիսի Ներսիսյան ու Գայանյան դպրոցներում, միաժամանակ զանազան ծածկանուններով թղթակցել է «Արմենիա», «Մշակ», «Մուրճ», «Տարազ» և այլ պարբերականներին (հայ ժողովրդի և Կովկասի ազգերի սոցիալ-տնտեսական կացության, բանվորական, ազգային-ազատագրական շարժման և դեմոկրատական պահանջների մասին հոդվածներով): 1898-ին մի խումբ ընկերների հետ Թիֆլիսում հիմնադրել է առաջին հայ բանվորական-մարքսիստական ընդհատակյա խմբակը: 1901-ին Ղ. ընտրվել է ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեի առաջին կազմում: 1902-ին ձերբակալվել է և չորս տարով աքսորվել Ենիսեյի նահանգ: Վերադառնալով աքսորից (1906) Անդրկովկաս, ընդգրկվել է քաղաքական-կազմակերպական գործունեության մեջ, զբաղվել ժուռնալիստկայով, աշխատակցել «Կայծ» թերթին, մասնակցել երկրամասի ս-դ. կազմակերպությունների աշխատանքներին: Որպես Պլեխանովի հետևորդ՝ Ղ. հարել է ՌՍԴԲԿ մենշևիկյան թևին: 1908—17-ին եղել է տարագրության մեջ (Շվեյցարիայում), որտեղ շարունակել է համագործակցել Պլեխանովի հետ՝ ակտիվորեն պաշտպանելով «մենշևիկ-կուսակցականների», պլեխանովականների տակտիկան՝ ընդդեմ լիկվիդատորների: Առաջին անգամ արտասահմանում են հրատարակվել նրա «Բանվորական շարժումը և սոցիալ-դեմոկրատիան Կովկասում» (1910, ռուս., Ժնև), «Համաշխարհային պատերազմը և սոցիալիզմը» (1915, ֆրանս.) աշխատությունները: 1917-ի մարտին վերադարձել է Թիֆլիս: Ընտրվել է բանվորների ու զինվորների Թիֆլիսի սովետի դեպուտատ, երկրային սովետի և Երևանի քաղաքային դումայի անդամ: Հայաստանի բուրժ. հանրապետության պառլամենտում հանդես է եկել ս-դ. ֆրակցիայի անունից: Սովետական կարգեր հաստատվելուց հետո Ղ. խզել է կապերը մենշևիկների հետ: 1921-ին նշանակվել է Թիֆլիսի հեղափոխության թանգարանի վարիչ, 1922-ին հրավիրվել Երևանի համալսարան, որտեղ կարդացել է «Սոցիալիզմի պատմություն» դասընթացը: Վ. Ի. Լենինի Կրեմլի տուն-թանգարանում պահպանվում է Ղ-ի աշխատության 1910-ի Ժնևյան հրատարակության երկու օրինակը՝ Վ. Ի. Լենինի անձնական գրքերի կնիքով և տեքստում կատարված նշումներով:



Գ. Հ. Ղարաջյան

*Երկ.* Անցյալի հիշողություններից, Թ., 1918: Հայ անդրանիկ հեղափոխական խմբակը Անդրկովկասում, Թ., 1927: Բանվորական շարժումը և սոցիալ-դեմոկրատիան Կովկասում (Գ. Վ. Պլեխանովի առաջաբանով), մաս 1, Ե., 1929:

*Գրկ.* Գ ր ի գ ո ր յ ա ն Մ. Ա., Գ. Ղարաջյանի տնտեսագիտական հայացքները, Ե., 1972:

*Ա. Մնացականյան*

**ՂԱՐԱՏՂԱ**, գյուղ Հայկական ՍՍՀ Ղափանի շրջանում, Աճանանի աջ ափին, շրջկենտրոնից 10 *կմ* հյուսիս-արևմուտք: Միավորված է Նորաշենիկի անասնապահական սովետական տնտեսության հետ: Ունի ակումբ, գրադարան: Գյուղից 1 *կմ* հվ. պահպանվել են Հոռոմանց գյուղատեղի (XVII դ.), եկեղեցի (XVII—XIX դդ.) և գերեզմանոց:

**ՂԱՐԱՓՈՒՂԱՐ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Խարբերդի վիլայեթի Չարսանճագի գավառում: 1914-ին ուներ 17 ընտանիք հայ բն., զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Ղ-ի հայերը տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է բռնագաղթի ճանապարհին: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՂԱՐԱՔԻԼԻՍԱՅԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏ 1918**, հայ ժողովրդի ինքնապաշտպանական կռիվներից մեկը: Տեղի է ունեցել մայիսի 24—28-ին, հայկ. և թուրք. զորքերի միջև, Ղարաքիլիսայի (այժմ՝ Կիրովական)

մոտ, առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ:

Օգտվելով այն հանգամանքից, որ Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունից հետո ռուս. բանակը հեռացավ Կովկասյան ռազմաճակատից, թուրքերը խախտեցին *Անդրկովկասյան կոմիսարիատի* հետ կնքված (1917-ի դեկտ. 5) զինադադարը և խուժեցին Արևմտյան Հայաստան ու Անդրկովկաս: Չհանդիպելով լուրջ դիմադրության՝ թուրք. զորքը 1918-ի սկզբին գրավեց Երզնկան, Էրզրումը, Սարիղամիշը, Կարսը և մայիսի 15-ին մտավ Ալեքսանդրապոլ: Նահանջող հայկ. զորքի (հրամանատար՝ գեն. Թ. Նազարբեկով) հետ գաղթում էին տասնյակ հազարավոր արևմտահայեր, որոնց անվտանգությունն ապահովում էր *Անդրանիկի* զորամասը: Գրավելով Ալեքսանդրապոլը և հենակետ դարձնելով՝ թուրք. զորքի մի մասը շարժվեց դեպի Երևան, մյուսը՝ Ղարաքիլիսա:

Ղարաքիլիսայում գեն. Նազարբեկովն ուներ 6 հզ. զինվոր, 70 հրանոթ և մոտ 20 գնդացիր, իսկ թուրքերը՝ 10 հզ. զինվոր, 70 հրանոթ և 40 գնդացիր: Մարտերին մասնակցում էր նաև Դիլիջանի և Փամբակի գյուղացիությունը: Հայկ. զորքը հիմնական հարվածները թուրքերին հասցնում էր Ղշլաղ գյուղի մոտ, Բզովդալի մատույցներում, Մայմեխի լանջերին: Չորս օր շարունակ հայկ. զորքը համառ մարտեր մղեց թուրք. գերակշռող ուժերի դեմ և երեք անգամ նրանց ստիպեց նահանջել դեպի Համամլու (այժմ՝ Սպիտակ): Սպանված, վիրավորված և գերի ընկած հայերի թիվը կազմում էր մոտ 2500: Մեծ էին նաև թուրքերի կորուստները: Թուրք. զորքը համալրում ստացավ Ալեքսանդրապոլից, և հայկ. զորքը ստիպված մայիսի 28-ին նահանջեց դեպի Դիլիջան: Փամբակի գյուղերը ենթարկվեցին կոտորածի և ավերի: Կոտորածներ տեղի ունեցան նաև Ղարաքիլիսայում, Համամլուում, Հաջիղարայում, Ղշլաղում և այլուր: Սարդարապատի (տես *Սարդարապատի ճակատամարտ 1918*) և Ղարաքիլիսայի հերոսական մարտերի շնորհիվ կոտորածից փրկվեց Երևանի, Արարատյան դաշտի և Սևանի ավազանի բնակչությունը: Պատերազմն ավարտվեց 1918-ի հունիսի 4-ի հայ-թուրքական պայմանագրով (տես *Բաթումի պայմանագիր 1918*):

*Գրկ.* Հայ ժողովրդի պատմություն, հ. 7, Ե., 1967: *Ա. Հարությունյան*

**ՂԱՐԱՔՅՈՅ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Դուրաքի գավառում: 1909-ին ուներ 15 ընտանիք հայ բն., զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Ղ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՂԱՐԻԲՅԱՆ** Ազատ Թորգոմի (ծն. 5.3. 1923, Երևան), հայ սովետական բալետի արտիստ, բալետմայստեր: ՀՍՍՀ ժող. արտիստ (1981): ՍՄԿԿ անդամ 1951-ից: Ավարտել է Երևանի (1940) և Լենինգրադի (1947) պարարվեստի ուսումնարանները: 1939-ից՝ Երևանի օպերայի և բալետի թատրոնի արտիստ, 1947-ից՝ բալետմայստեր: Լավագույն դերապարերից են՝ Բազիլ (Մինկուսի «Դոն Կիխոտ»), Կարեն (Խաչատրյանի «Գայանե»), բեմադրություններից՝ Սակիլարիի «Մոյդոդիր» (1963), Գ. Հախինյանի «Ախթամար», «Լոռեցի Սաքոն» (երկուսն էլ՝ 1965-ին): 1966-ից եղել է Հայաստանի պարի պետ. անսամբլի գեղ. ղեկավարը և գլխավոր բալետմայստերը, 1968-ից՝ Հայկ. ժող. երգի-պարի վաստ. անսամբլի գլխավոր բալետմայստերը: 1952-ին հիմնադրել և ղեկավարում է Երևանի կարճելի գործարանի ժող. պարի անսամբլը: Հեղինակ է «Հայկական ժողովրդական պարեր» աշխատության (1956): *Գ. Ստեփանյան*

**ՂԱՐԻԲՅԱՆ** Արամ Սեռոբի (ծն. 23.5. 1911, Սղերդ), հայ սովետական նկարիչ և քանդակագործ: 1933—37-ին սովորել է Բուխարեստի գեղարվեստի դպրոցում:



Ա. Ղարիբյան. «Քաղաքային բնանկար» (1940, Գ. Զամպաքճյանի հավաքածու, Բուխարեստ)

Վաղ շրջանի գեղանկարչական մի շարք աշխատանքներ տեղ են գտել Գ. *Զամպաքճյանի* հավաքածուում: 1946-ին ներգաղթել է Սովետական Հայաստան: Աշխատում է գեղանկարչության և քանդակագործության ասպարեզում: Լավագույն գործերից են՝ «Ինքնադիմանկար» (1947), «Երևանի բնապատկերներ» (1948), «Նատյուրմորտ. բանջարեղեն» (1956), «Խաղաղություն» (գիպս, 1960), «Մայրը և երեխան» (գիպս, 1962), «Կոմիտաս» (մարմար, 1969): 1947-ից մասնակցում է հանրապետական, համամիութենական, միջազգային ցուցահանդեսների:

**ՂԱՐԻԲՅԱՆ** Արարատ Սահակի [27.1.1899, գ. Դարղալու (այժմ՝ ՀՍՍՀ Արտաշատի շրջան, գ. Այգեզարդ)—1.3.1977, Երևան], հայ սովետական լեզվաբան: Բան. գիտ. դ-ր, պրոֆեսոր (1940), ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1960), գիտ. վաստ. գործիչ (1954): 1927-ին ավարտել է Երևանի համալսարանը: 1929—48-ին դասախոսել է նույն համալսարանում, միաժամանակ նաև Բաքվի, Թբիլիսիի և Լենինականի մանկավարժական ինստ-ներում, իսկ 1934—77-ին՝ Խ. Աբովյանի անվ. մանկավարժական ինստ-ում, որտեղ կազմակերպել է (1934) հայոց լեզվի ամբիոն և այն գլխավորել մինչև 1960-ը: 1943—50-ին և 1956—62-ին ՀՍՍՀ ԳԱ լեզվի ինստ-ի դիրեկտորն էր, 1962-ից՝ հիմնակազմ գրադարանի դիրեկտորը: 1955—67-ին ղեկավարել է ՀՍՍՀ ԳԱ լեզվի, գրականության, արվեստի՝ գիտական աստիճաններ շնորհող միացյալ գիտխորհուրդը:





Ա. Ս. Ղարիբյան Գ. Մ. Ղարիբյան

Ղ-ի գիտական աշխատանքները վերաբերում են հայոց լեզվի պատմությանը, հայ բարբառագիտությանը, ժամանակակից հայերենի կառուցվածքային իրողություններին, բառարանագրությանը, հայոց լեզվի դասավանդման մեթոդիկային են: Հայոց լեզվի պատմության բնագավառում առաջին շրջանում Ղ-ի կատարած գիտահետազոտական աշխատանքների ամփոփումն է «Հայոց լեզվի պատմության ուսումնասիրության ներածություն» (1937) աշխատությունը, որտեղ հեղինակն անդրադառնում է հայ ժողովրդի ու նրա լեզվի ծագմանը, ապա, ըստ իր ընդունած շրջաբաժանման, հիմնական գծերով բնութագրում է գրաբարը, միջին հայերենը, աշխարհաբարն իր արլ. ու արմ. ճյուղավորումներով, ինչպես նաև մինչ այդ գիտությանը հայտնի հայերենի բարբառները: Այստեղ (ինչպես և այլ աշխատություններում) ակնհայտորեն զգացվում է Ն. Յա. *Մառի* լեզվի «նոր ուսմունքի» որոշ ծայրահեղ դպրոցների ազդեցությունը, ապա և դրանից բխող ժխտողական վերաբերմունքը դասական և հատկապես պատմահամեմատական լեզվաբանության հանդեպ: Հետագայում Ղ. ձգտել է վերանայել իր դիրքը և առանձին հոդվածներում դիմել նաև պատմահամեմատական մեթոդին:

Հայ բարբառագիտության բնագավառում Ղ-ին առավելապես հետաքրքրել են բարբառների դասակարգման, նյութի վերհանման ու գիտական նկարագրման խնդիրները: «Հայերեն բարբառների մի նոր ճյուղ» (1939) ուսումնասիրությամբ նա հիմնավորել է բարբառների ձևաբանական դասակարգման գիտականությունը՝ միաժամանակ մինչ այդ ընդունված 3 ճյուղերին ավելացնելով չորրորդ՝ «ս» ճյուղը, տվել այդ ճյուղի 6 բարբառների համառոտ նկարագիրը (հետագայում դրանց թիվն ընդլայնվել է): 1950-ական թթ. սկզբներին առաջ է քաշել բարբառների տիպաբանական դասակարգման հարցը՝ ընդունելով դերբայավոր («ում»,«լ», «ս» ճյուղերով), մասնիկավոր («կը», «կա», «հա» ճյուղերով) և գրաբարատիպ խմբեր:

Բառարանագրության ասպարեզում իբրև հեղինակակից մասնակցել է «Ռուս—հայերեն» (1945) և «Հայ—ռուսերեն» (1947) համառոտ բառարանների ստեղծմանը: Առավել նշանակալից է «Ռուս—հայերեն բառարանը» (1968, ՀՍՍՀ պետ. մրցանակ, 1971), որն ընդգրկում է 85000 բառահոդված, շուրջ 100000 բառ և դարձվածք: Ղ. Սովետական Հայաստանում

սկզբնավորել է համաբարբառների կազմման գործը. նրա անմիջական ղեկավարությամբ լույս են տեսել Ագաթանգեղոսի, Կորյունի, Ղազար Փարպեցու և այլոց ստեղծագործությունների համաբարբառները:

Ղ-ի գրած V—VI դասարանների հայոց լեզվի դպրոցական դասագրքերը, որ ընդգրկում են հնչյունաբանությունը, բառագիտությունը և ձևաբանությունը, 1934-ից բազմաթիվ վերահրատարակություններով գործածության մեջ են մնացել ավելի քան 30 տարի: Ղ. հայոց լեզվի մի շարք դասագրքեր է գրել նաև այլ դասարանների, ինչպես նաև ոչ հայկ. դպրոցների համար: Ղ-ի հայոց լեզվի դասավանդման մեթոդիկային նվիրված ուսումնասիրությունների յուրովի հանրագումարն է «Հայոց լեզվի դասավանդման մեթոդիկա» (1954) ձեռնարկը, որտեղ նախ շարադրվում են մայրենի լեզվի դասավանդման մեթոդիկայի գիտամանկավարժական հիմունքները, պլանավորման հարցերը, ապա հնչյունաբանության, բառագիտության, ձևաբանության ու շարահյուսության բաժիններով տրվում է համապատասխան նյութի մատուցման մեթոդների ու մեթոդական հնարների կիրառման հնարավոր պատկերը: Այդ բոլորով հանդերձ՝ շեշտը դրվում է նաև սովորողների բանավոր ու գրավոր խոսքի զարգացման կարևորության վրա: Ղ. պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով (1969):

*Երկ.* Արարատ Սահակի Ղարիբյան (Մատենագիտություն), Ե., 1971 (Սովետական Հայաստանի ականավոր գիտնականները, № 13):

*Գրկ.* Աղայան Է. Բ., Հայ լեզվաբանության պատմություն, հ. 2, Ե., 1962: Կոստանյան Հ. Հ., Սովետահայ լեզվաբանության երախտավորը, «ՊԲՀ», 1969, № 1: Աբրահամյան Ա. Ա., Ա. Ս. Ղարիբյան, «ՊԲՀ», 1979, № 2: *Ա. Աբրահամյան*

**ՂԱՐԻԲՅԱՆ** Արարատ Սմբատի [ծն. 23.5. 1911, գ. Աղբաշ (այժմ՝ ՀՍՍՀ Արտաշատի շրջանում) —23.6.1952, Մոսկվա], հայ սովետական նկարիչ: 1923—29-ին սովորել է Լենինգրադի բարձրագույն գեղարվեստա-տեխնիկական ինստ-ում (Վխուտեին), Պ. Ա. Շիլինգովսկու մոտ: Աշխատել է հիմնականում գրաֆիկայի մարզում: Ստեղծել է դիմանկարներ, հին ու նոր Երևանը պատկերող բնանկարներ, ձևավորել գրքեր: Աշխատանքներից են. «Աղբաշեցու դիմանկարը» (փայտագրություն, 1928), «Վահրամ Փափազյանը Օթելլոյի դերում» (փափուկ լաք, 1939), «Հին Երևան» (ինքնավիմագրություն), «Օպերայի և բալետի թատրոնի շենքը Երևանում» (տուշ, 1952), Ն. Զարյանի «Ռուշանի քարափը» գրքի շապկանկարը (գուաշ, 1931): 1947—52-ին դասավանդել է Երևանի գեղարվեստա-թատերական ինստ-ում: Անհատական ցուցահանդեսներ է ունեցել Երևանում (1933, 1940):

Ա. Ղարիբյան. «Ալավերդու պղնձաձուլական գործարանը», օֆորտ (1947, Հայաստանի պետական պատկերասրահ, Երևան)



**ՂԱՐԻԲՅԱՆ** Գրիգոր Ալեքսանդրի [ծն. 15.5.1930, գ. Բորիսովկա (ՀՍՍՀ Սիսիանի շրջանում)], հայ սովետական տնտեսագետ: Տնտ. գիտ. դ-ր (1976), պրոֆեսոր (1978): ՍՄԿԿ անդամ 1954-ից: Ավարտել է Երևանի համալսարանի տնտեսագիտության ֆակուլտետը (1954): 1966—78-ին՝ համալսարանի քաղաքատնտեսության ամբիոնի դոցենտ, 1978-ից՝ ուսումնական աշխատանքի գծով պրոռեկտոր: Գիտական աշխատանքները վերաբերում են սոցիալիզմի պայմաններում անհրաժեշտ և հավելյալ արդյունքի, բնակչության կենսամակարդակի բարձրացման սոցիալ-տնտեսական պրոբլեմներին:

*Երկ.* Անհրաժեշտ և հավելյալ արդյունքը սոցիալիստական հասարակարգում, Ե., 1968: Բնակչության կենսամակարդակը և նրա բարձրացումը Սովետական Հայաստանում, Ե., 1972: Проблемы повышения уровня жизни населения в развитом социалистическом обществе, Е., 1977.

**ՂԱՐԻԲՅԱՆ** Գրիգոր Մարգարի (ծն. 13.12. 1924, Թբիլիսի), հայ սովետական ֆիզիկոս-տեսաբան, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1971), պրոֆեսոր (1972): ՍՄԿԿ անդամ 1972-ից: Ավարտել է Մոսկվայի համալսարանը (1948): 1959-ից Երևանի ֆիզիկայի ինստ-ի լաբորատորիայի վարիչ, 1959—1965-ին միաժամանակ եղել է դիրեկտորի տեղակալ: 1973-ից՝ ՀՍՍՀ ԳԱ ֆիզմաթ բաժանմունքի ակադեմիկոս քարտուղար: Աշխատանքները վերաբերում են քվանտային էլեկտրադինամիկային, աստղաֆիզիկային, տիեզերական ճառագայթներին և բարձր էներգիայի ֆիզիկային: Ուսումնասիրել է *արգելակման ճառագայթումը* և զույգի առաջացումը էլեկտրոնի կամ պոզիտրոնի դաշտում՝ ընկնող մասնիկի ցանկացած էներգիայի դեպքում, հանդիպական էլեկտրոն-պոզիտրոնային փնջերում ընթացող պրոցեսները: Հաշվել է միգամածությունների և աստղերի մագնիսական դաշտում շարժվող ռելյատիվիստական էլեկտրոնների ճառագայթման բևեռացումը, կապ հաստատել երկրի մթնոլորտում պիոնների և մյուոնների սպեկտրների միջև, հետազոտել մեծ արագության մասնիկների և միջաստղային փոշեհատիկների բախումից առաջացող ճառագայթման ներդրումը երկնքի ռենտգենյան լուսարձակման ընդհանուր ֆոնում: Ուսումնասիրությունների գլխավոր ուղղությունն ընդգրկում է միջավայրում բարձր էներգիայի մասնիկների էներգետիկ կորուստների էլեկտրամագնիսական մեխանիզմների հետազոտությունը՝ դասական մակրոսկոպիկ էլեկտրադինամիկայի շրջանակներում: Այդ աշխատանքների հիմնական արդյունքը եղել է ռենտգենյան անցումային ճառագայթման (ՌԱՃ) հայտնաբերումը, այսինքն՝ ապացուցվել է, որ բարձր էներգիայի մասնիկների *անցումային ճառագայթումն* ունի հաճախականությունների ռենտգենյան տիրույթ, որի վերին սահմանը առաջնային մասնիկի էներգիայից կախված է գծայնորեն: Այդ հատկությունը թույլ է տալիս տիեզերական ճառագայթներում և արագացուցիչներում ՌԱՃ-ի միջոցով կատարել բարձր էներգիայի մասնիկների նույնացում: ՌԱՃ-ի տեսության մշակման ժամանակ Ղ. աշխատակիցների հետ հաշվի է առել մի շարք նուրբ էֆեկտներ, օրինակ, բազմակի ցրման ազդեցությունը ՌԱՃ-ի վրա: Ղ. տեսականորեն ապացուցել է նաև, որ նյութի բարակ թաղանթներում մեծ արագության մասնիկների իոնացման կորուստները տեղի են ունենում առանց ֆերմիի խտության էֆեկտի:

*Երկ.* О некоторых электромагнитных эффектах с участием сильно взаимодействующих частиц, «Журнал экспериментальной и теоретической физики», т. 33, в. 2, 1957 (соавтор Л. М. Африкян); К теории переходного излучения и ионизационных потерь энергии частицы, նույն տեղում, т. 37, в. 2, 1959.

**ՂԱՐԻԲՅԱՆ** Իշխան Աստուրի (ծն. 7.12. 1924, Բաքու), հայ սովետական դերասան: ՀՍՍՀ ժող. արտիստ (1980): Ավարտել է Երևանի գեղարվեստա-թատերական ինստ-ի դերասանական ֆակուլտետը (1950): 1950-ից՝ Երևանի Սունդուկյանի անվ., 1954-ից՝ Երևանի պատանի հանդիսատեսի, 1967-ից՝ Երևանի դրամատիկական թատրոնների դերասան: Լավագույն անձնավորումներից են՝ Կոռնովալի դուքս (Շեքսպիրի «Լիր արքա»), Ձերժինսկի (Մ. Շատրովի «Հանուն հեղափոխության»), Արթին աղա (Ե. Օտյանի «Սեր և ծիծաղ»), Միկոլա (Ի. Ֆրանկոյի «Գողացված երջանկություն»), Ազարո (Օ. Իոսելիանիի «Քանի դեռ սայլը շուռ չի եկել»): Բեմադրել է Մ. Տվենի «Թոմ Սոյերի արկածները» և «Աղքատն ու արքայազնը» (Երևանի պատանի հանդիսատեսի թատրոն) ստեղծագործությունները:

**ՂԱՐԻԲՅԱՆ** Հրայր Արամի (ծն. 14.9. 1904), հայ սովետական կինոօպերատոր: 1931-ին ավարտել է կինեմատոգրաֆիայի պետ. տեխնիկումի օպերատորական ֆակուլտետը, աշխատել «Սոյուզդետֆիլմ» (այժմ՝ Մ. Գորկու անվ. ստուդիա) կինոստուդիայում: «Լինում է, չի լինում մի աղջիկ» (1944), «Գնդի որդին» (1946), «Ձուկը և Գեկը» (1953), «Աշխարհի չեմպիոնը» (1955), «Հողը և մարդիկ» (1955), «Երբ բացվում են վարդերը» (1959), «Երկուշաբթին ծանր օր է», «Հեռավոր երկրներ» (երկուսն էլ՝ 1964) ևն ֆիլմերի գլխավոր օպերատորն է:

**ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ** Բագրատ Բեգլարի [22.5. 1890, գ. Բահառլու (Սուրմալուի գավառում)—14.8.1920, Երևան], Անդրկովկասում հեղափոխական շարժման ակտիվ մասնակից և Հայաստանում սովետական իշխանության համար մղված պայքարի ղեկավարներից: 1905-ին ավարտել է Իգդիրի քաղաքային ուսումնարանը, ապա զբաղվել ուսուցչությամբ (Սուրմալուի գավառի Տավշանղշլաղ, Մարգարա, Զոր գյուղերի ու Իգդիրի դպրոցներում): Ընդգրկվելով հեղափոխական շարժման մեջ՝ 1917-ին մտել է բոլշևիկյան կուսակցության շար-

քերը, հուլիսին ընտրվել է ՌՍԴԲ(բ)Կ Ալեքսանդրապոլի կազմակերպության բյուրոյի անդամ, աշխատակցել «Նոր կյանք» թերթին, Պ. Արվելաձեի հետ խմբագրել «Պրավդա ժիզնի» («Правда жизни») թերթը: Նույն շրջանում թղթակցել է «Կավկազսկի ռաբոչի» («Кавказский рабочий») բոլշևիկյան թերթին: Մտել է Ալեքսանդրապոլի բանվորների և զինվորների դեպուտատների սովետի և քաղաքային դումայի բոլշևիկյան ֆրակցիայի մեջ: 1917-ի դեկտեմբերից 1918-ի մայիսը եղել է ՌՍԴԲ(բ)Կ Ալեքսանդրապոլի կազմակերպության նախագահը: 1918-ի մայիսին, թուրքերի կողմից Ալեքսանդրապոլի օկուպացման պատճառով, տեղափոխվել է Թիֆլիս և տարել պրոպագանդիստական աշխատանք, կարդացել հրապարակային դասախոսություններ, որի համար բանտարկվել է և 1919-ի սկզբներին արտաքսվել Վրաստանից: Վերադարձել է Ալեքսանդրապոլ և ընտրվել ընդհատակյա բոլշևիկյան կազմակերպության կոմիտեի քարտուղար: Ալեքսանդրապոլում ղեկավար մասնակցություն է ունեցել Մայիսյան ապստամբությանը և հաղթանակի օրերին եղել է ֆինանսների կոմիսար: Ապստամբության պարտությունից հետո ձերբակալվել է ու տեղափոխվել Երևանի բանտ: Օգոստ. 14-ին Ս. Ալավերդյանի ու Ս. Մուսայելյանի հետ, Նորքի ձորում, գնդակահարվել է դաշնակների կողմից: Թաղված է Երևանի 26 կոմիսարների անվ. զբոսայգում: Հեղինակ է տպագիր ու անտիպ մի շարք աշխատությունների: Ղ-ի անունով կոչված են գյուղ ու կոլտնտեսություն Ախուրյանի շրջանում, փողոց և դպրոց Լենինականում, պիոներական դրուժինա ու գրադարան Երևանում, Լենինականում գործում է Բ. Ղարիբջանյանի տուն-թանգարանը: Ղ-ի հոդվածներն ու ելույթները հրատարակվել են առանձին ժողովածուով՝ «Սովետական իշխանության համար մղված պայքարում» (1966):

*Գրկ.* Մելքոնյան Ա. Հ., Բագրատ Ղարիբջանյան, Ե., 1954:

**ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ** Գևորգ Բագրատի [ծն. 5.5.1920, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)], սովետական պատմաբան: Պատմ. գիտ. դ-ր (1955), պրոֆեսոր (1956), ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1971, թղթ. անդամ՝ 1965), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1968), Ս. Շահումյանի անվ. մրցանակի դափնեկիր (1979): *Բ. Ղարիբջանյանի* որդին: ՍՄԿԿ անդամ 1942-ից: Ավարտել է Երևանի համալսարանի պատմության ֆակուլտետը (1941): Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին (1941—45): 1948—1950-ին եղել է ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղար, 1951—54-ին՝ ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստ-ի (ՄԼԻ) հայկ. մասնաճյուղի կուսակցության պատմության սեկտորի վարիչ: 1954—61-ին կուսակցական ղեկավար աշխատանք է տարել ՀԿԿ Կենտկոմում (բաժնի վարիչի տեղակալ, բաժնի վարիչ), 1961—68-ին՝ Լենինականի քաղաքային կոմիտեի առաջին քարտուղար, 1968—77-ին՝ ՍՄԿԿ ԿԿ-ին կից ՄԼԻ հայկ. մասնաճյուղի դիրեկտոր: 1977-ից ՀՍՍՀ ԳԱ պատմության և տնտեսագիտության բաժանմունքի ակադեմիկոս քարտուղարն է (ակադեմիայի նախագահության անդամ): 1947-ից դասախոսել է Երևանի բուհերում (պետ. համալսարան, բժշկ. և պոլիտեխնիկական ինստ-ներ, ՀԿԿ Կենտկոմի կուսակցական դպրոց): Հեղինակ է բազմաթիվ գիտական աշխատությունների, որոնք նվիրված են ՍՄԿԿ, Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների ու հեղափոխական շարժումների, հայ ժողովրդի պատմության, ինչպես նաև միջազգային կոմունիստական շարժման հարցերին: Համահեղինակ և խմբագիր է Անդրկովկասի և Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների պատմությանը վերաբերող կոլեկտիվ աշխատությունների: Եղել է ՍՍՀՄ VI և VII, ՀՍՍՀ VIII և IX գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: 1954—81-ին՝ ՀԿԿ Կենտկոմի անդամ, 1966—69-ին՝ ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածու: ՍՄԿԿ XXII—XXIII համագումարների պատգամավոր: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի (2), Ժողովուրդների բարեկամության, «Պատվո նշան» շքանշաններով:



Բ. Բ. Ղարիբջանյան    Գ. Բ. Ղարիբջանյան

*Երկ.* Մայիսյան ապստամբությունը Հայաստանում 1920, Ե., 1955: Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները սովետական իշխանության հաղթանակի համար մղված պայքարում, Ե., 1955: Լենինը Շվեյցարիայում էմիգրացիայի տարիներին, Ե., 1960: Վ. Ի. Լենինը և Անդրկովկասը, մաս 1—3, Ե., 1970—1975: Ստեփան Շահումյան, Ե., 1978: Մեծ հոկտեմբերը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը, Ե., 1978: Ալյոշա Ջափարիձե, Ե., 1979: Վ. Ի. Լենինը և հայ գործիչները, Ե., 1980: С. Каспаров видный деятель коммунистической партии, Е., 1965; П. Арвеладзе, Тб., 1970; В. И. Ленин и большевики Закавказья, М., 1971; Под знаменем Ленинизма, М., 1971; Богдан Кнунянц—рыцарь революции, Е., 1978; В единой семье советских народов, М., 1978. *Ա. Սիմոնյան*

**ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ** Լյուդվիգ Պապիկի (ծն. 24.8.1922, Երևան), կուսակցական և պետական աշխատող: Պատմ. գիտ. թեկնածու (1960), դոցենտ (1975), ՍՄԿԿ անդամ 1943-ից: Ավարտել է Երևանի համալսարանի պատմության ֆակուլտետը (1945): 1945—51-ին եղել է կոմերիտական ղեկավար աշխատող (ՀԼԿԵՄ Երևանի Կիրովյան շրջկոմի և քաղկոմի առաջին քարտուղար), 1951—53-ին և 1957—61-ին՝ Երևանի համալսարանի կուսկոմիտեի քարտուղար, ՀԿԿ Կենտկոմի հրահանգիչ և պատասխանատու կազմակերպիչ (1953), ՀԿԿ Սպանդարյանի շրջկոմի առաջին քարտուղար (1954—57), ՀԿԿ Երևանի քաղկոմի երկրորդ (1961—66), առաջին (1966—75) քարտուղար: 1975-ից՝ ՀՍՍՀ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստր: ՀԿԿ Կենտկոմի անդամ է 1958-ից, 1966—76-ին՝ ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ: ՍՍՀՄ VII—IX և ՀՍՍՀ V, VI, VII և X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Հեղինակ է «Երևանի պետական համալսարանը» (1920—1930 թթ.) (1965) աշխատության: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի (4) շքանշանով:

**ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ** Հակոբջան Ալեքսանդրի [ծն. 1(14).2.1902, գ. Բահառլու (Սուրմալուի գավառում)], հայ սովետական նկարիչ և վերականգնող: 1922—29-ին սովորել է Թիֆլիսի գեղարվեստի ակադեմիայում՝ Ե. Թադևոսյանի, Ե. Ե. Լանսերեի և Բ. Ա. Ֆոգելի մոտ: 1928-ից մասնակցել է «Հայարտան» (1928—31-ին դասավանդել է նկարչություն), ինչպես և հանրապետական ու միութենական ցուցահանդեսներին: 1970-ից ապրում է Երևանում: Ստեղծագործում է դիմանկարի, նատյուրմորտի, բնանկարի ժանրերում: Վաղ շրջանի գործերին բնորոշ են «էտյուդային» անմիջականությունը, զուսպ գունահարաբերություններն ու գեղանկարչական ավարտվածությունը: Ղ. ձգտում է առավել նյութականության, գծանկարի և կոմպոզիցիայի կառուցիկության («Վիրահատություն», 1928, «Կարբիդի գործարանը: Երևան», 1933, երկուսն էլ՝ Հայաստանի պետ. պատկերասրահում, «Գիպսե ձեռք», 1928): Ղ-ի դիմանկարները աչքի են ընկնում կերպարի հավաքական գծերի ընդհանրականությամբ («Նիզամի», 1947, «Ներսես Շնորհալի», 1978), պատմական անձնավորությունների հավաստիությամբ («Վեզալիա», «Պարե», երկուսն էլ՝ 1934—35): Ջրաներկով արված մի շարք նկարներ («Աղջիկը, մանյակը և հայելին», 1943, «Մայր իմ անուշ ու անգին», 1977) բնորոշվում են նրբագեղությամբ և զուսպ կատարումով: 1934-ից Ղ. վերականգնման աշխատանքներ է կատարել Երևանի, Թբիլիսիի և Մոսկվայի թանգարաններում (անհայտ վարպետներ, Հակոբ Հովնաթանյան, Հ. Այվազովսկի, ինչպես և ռուս., վրաց. և արևմտաեվրոպական դասականների գործեր)՝ որպես այդ ասպարեզի լավագույն

Հ. Ղարիբջանյան. «Նիզամի» (1947)



մասնագետներից մեկը Սովետական Միությունում: Ղ-ի հայկ. և վրաց. մանրանկարչության, կիրառական արվեստի հնագույն նմուշների կրկնօրինակումները տպվել են Հայաստանում և Վրաստանում հրատարակված մենագրություններում:

**ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ** Ղարիբջան Ալեքսանդրի (15.10.1896, Իգդիր —27.9.1969, Լենինգրադ), հայ սովետական կուրորտաբան, տրավմատոլոգ: Բժշկ. գիտ. դ-ր (1949), պրոֆեսոր (1954): Բժշկ. ծառայության գնդապետ: ՍՄԿԿ անդամ 1921-ից: 1914-ին ավարտել է Թիֆլիսի Ներսիսյան դպրոցը, 1924-ին՝ Դոնի Ռոստովի համալսարանի բժշկ. ֆակուլտետը: 1934-ին զորակոչվել է կարմիր բանակ և նշանակվել Հեռավոր Արևելքի ռազմածովային հոսպիտալի պետ., այնուհետև՝ Լենինգրադի Ս. Կիրովի անվ. ռազմաբժշկական ակադեմիայի կլինիկայի ղեկավար: Մասնակցել է Մոնղոլիայում ճապոն. զավթիչների (1938), սպիտակ ֆինների դեմ մղված (1939—40) և Հայրենական մեծ պատերազմներին, եղել բանակի գլխավոր վիրաբույժ: 1960-ից աշխատել է Լենինգրադի տարբեր բուժհիմնարկներում: Մեծ օգնություն է ցույց տվել Հայաստանի առողջապահության կազմակերպման և բժշկ. կադրերի պատրաստման գործին: Պարգևատրվել է Կարմիր դրոշի, Հայրենական պատերազմի I և II աստիճանների, Կարմիր աստղի շքանշաններով:

*Երկ.* Огнестрельные повреждения тазобедренного сустава, Л., 1950.

**ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ** (մինչև 1935-ը՝ Ալեքսանդրովկա), գյուղ Հայկական ՍՍՀ Ախուրյանի շրջանում, շրջկենտրոնից 9 *կմ* հարավ-արևմուտք: Ղ-ով է անցնում Լենինական—Հոկտեմբերյան ավտոճանապարհը, մոտով՝ Լենինական—Կարս երկաթուղին: 1928-ին կազմակերպվել է կոմունա, 1930-ից դարձել կոլտնտեսություն,



Ղարիբջանյան

որն զբաղվում է հացահատիկի, կերային կուլտուրաների, շաքարի ճակնդեղի մշակությամբ, անասնապահությամբ: Ունի ութամյա դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կինո, կապի բաժանմունք, մսուր-մանկապարտեզ, բուժկայան: Անվանվել է ի պատիվ Բ. *Ղարիբջանյանի*:

**ՂԱՐՂՈՒՆ**, հայաբնակ գյուղ Իրանում, Սպահանի նահանգի Փերիա գավառի Վարզաղ գավառակում: Հիմնել են Փերիայի մյուս գյուղերի բնակիչները XVII դ. 2-րդ կեսին: 1970-ին ուներ 30 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում են երկրագործությամբ և անասնապահությամբ: Ղ-ում կա եկեղեցի (Ս. Նշան)՝ կից վարժարանով: Եկեղեցում պահվում է երկու ձեռագիր ավետարան: Գյուղն ունի չորս ջրաղաց, բաղնիք, քրիստոնեական ուխտատեղի:

**ՂԱՐՏԱՇ ԿԱԶՄՈՂ** (ծն. և մահ. թթ. անհտ.), XVI դ. հայ քարգործ վարպետ: Նրա կերտած երեք խաչքարեր գտնվում են *Գնդեվանքում* (Ազիզբեկովի շրջանի Գնդեվազ գյուղ): Առաջինը սպիտակավուն քարից է՝ ագուցված եկեղեցու արմ. մուտքի վերին մասում, խորշի մեջ: Խաչքարը բաժանված է 14 քառակուսիների, որոնցից յուրաքանչյուրը զարդարված է տարբեր մոտիվների քանդակներով (Աստվածածին, Հովսեփ, կենդանապատկերներ ևն): Խաչքարի ներքևի մասի կենտրոնում կազմողի հիշատակագրությունն է: Երկրորդը փոքր խաչքար է, նույնպես սպիտակավուն քարից, մեջտեղից կիսված, զարդաքանդակներով: Երրորդ խաչքարը ագուցված է վանքի հվ. պարսպի ներսի կողմում: Սրան ագուցված են երեք փոքր խաչքարեր: Բոլոր խաչքարերն էլ թվագրված են 1573:

**ՂԱՈՒՐՄԱ**, հայաբնակ գյուղ Վրացական ՍՍՀ Բոգդանովկայի շրջանում: Ունի 797 (146 ընտանիք) բնակիչ (1975): Զբաղվում են հողագործությամբ և անասնապահությամբ: Գյուղում գործում է ութամյա դպրոց: Ղ-ի հայերը գաղթել են 1830-ին, Արևմտյան Հայաստանի Էրզրումի նահանգից:

**ՂԱՓԱՄԱ**, Խ ա փ ա մ ա, հայկական կերակուր: Գառան կամ ուլի փորոտիքի մեջ ձավարի, սոխի և ռեհանի հետ խառնած միսը մոտ 5—6 *ժ* եփում են թոնրում՝ բերանը խուփով ծածկած և շուրջը խմորով ծեփված (գոլորշին դուրս չգալու համար) կճուճի մեջ: Ղ. եփում են նաև դդումով. կեղևը մաքրում են, վերևի մասը կտրում, կորիզները հանում, մեջը լցնում խաշած բրինձ, չամիչ, յուղ, մեղր և համեմունք, եփում կավե ամանի մեջ՝ փռում կամ թոնրում:

*Լ. Պետրոսյան*

**ՂԱՓԱՆ** (անունը կապված է *Կապան* քաղաքի անվան հետ, որը գտնվում էր այժմյան Ղ-ից մոտ 10 *կմ* արմ., Ողջիի աջ ափին), քաղաք (1938-ից) Հայկական ՍՍՀ-ում, Ղափանի շրջանի վարչական կենտրոնը: Հեռավորությունը Երևանից 320 *կմ* է: 36000 բն. (1976): Գտնվում է Զանգեզուրի հվ. մասում, Խուստուփ լեռան հս. ստորոտին, մոտ 705 *մ* բարձրության վրա: Տարեկան միջին ջերմաստիճանը 11,5°C է, հունվարինը՝ 0°C, հուլիսինը՝ 23°C, առավելագույնը՝ 38°C, նվազագույնը՝ —27°C, տեղումները՝ 572 *մմ*: Սառնամանիքները խազվադեպ են: Ղ-ի միջով հոսում է Ողջի գետը, որը քաղաքում ընդունում է Վաչագան ու Կավարտիջուր վտակները:

Ղ. Հայկական ՍՍՀ արդ. կարևոր կենտրոններից է: Տնտեսության առաջատար ճյուղը լեռնահանքային արդյունաբերությունն է: Ղ-ի պղնձահանքերը հայտնի էին դեռևս միջին դարերում, սակայն նրա արդ. օգտագործումն սկսվել է XIX դ. 2-րդ կեսին՝ ֆրանսիացիների կողմից, որոնք այստեղ կառուցեցին ձուլարաններ: Ղ., Ալավերդու հետ միասին, պղնձի արդյունահանությամբ ցարական Ռուսաստանում գրավում էր 2-րդ տեղը: Սովետական կարգեր հաստատվելուց հետո հետամնաց բանվորական ավանը դարձավ ՍՍՀՄ պղնձարդյունաբերության կենտրոններից մեկը: Արդյունաբերության առաջնեկը Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատն է (տես *Պղնձամոլիբդենային արդյունաբերություն*): Քաղաքում կան լուսատեխնիկական, ավտոնորոգման, պահածոների, կաթի, հացի, լիմոնադի, գարեջրի գործարաններ, տրիկոտաժի, կահույքի, թռչնաբուծական ֆաբրիկաներ, մսի, շինարարական իրերի, կենցաղսպասարկման կոմբինատներ, շինարարական 7 կազմակերպություն, ճանապարհների շահագործման և շինարարության տեղամաս, ջերմոցային տնտեսություն, ՀԷԿ: Ղ-ում է «Էլեկտրոն» արտադրական միավորման մասնաճյուղը, «Սյունիք» կաթնաանասնապահական, բանջարաբուծական և պտղաբուծական սովետական տնտեսությունը:



Նոր թաղամաս



Լեռնագործների մշակույթի պալատը

1978—79-ին գործում էին 18 միջնակարգ և ութամյա, նկարչական, երաժշտական, մարզական և գիշերօթիկ դպրոցներ, կինոթատրոններ, լեռնամետալուրգիական և շինարարական տեխնիկում, բժշկ., երաժըշտական և պրոֆտեխնիկական ուսումնարաններ, մսուր-մանկապարտեզներ, լեռնագործների և շինարարների կուլտուրայի տներ, ակումբային հիմնարկներ, գրադարաններ, դրամատիկական թատրոն, հայրենագիտական թանգարան, տուրիստական հանգրվան, կապի, ռադիոհաղորդումների և հեռուստատեսության կայաններ, տպարան: Ղ-ում են գտնվում ՀՍՍՀ ԳԱ հաշվիչ կենտրոնի Զանգեզուրի հարմարվող համակարգերի և երկրաբանական ինստ-ի Ղափանի մետալուրգիական լաբորատորիաները, գիտատեխնիկական ինֆորմացիայի և տեխնիկա-տընտեսական ԳՀԻ-ի Ղափանի բաժանմունքը:

Ղ. տրանսպորտային հանգույց է: Ղափան—Մինջևան երկաթուղով կապվում է Երևանի ու Բաքվի հետ: Շրջանի գյուղերի, ինչպես նաև Երևանի, Գորիսի, Քաջարանի և Ստեփանակերտի հետ ունի ավտո-



Ղ ա փ ա ն. կապի հանգույցի շենքը (1959)



Հունան Ավետիսյանի արձանը Ղափանում

բուսային կապ: Կա օդանավակայան, որով կապ է պահպանում Երևանի, ամռանը՝ նաև Սոչիի հետ: Ղ-ում աշխատում են 124 բժիշկ, 401 միջին և կրտսեր բուժաշխատող: Քաղաքում գործում են 2 հիվանդանոց, 2 պոլիկլինիկա, 2 դիսպանսեր, 3 դեղատուն, 19 առողջապահական կայան, շտապ բժշկ. օգնության և սանէպիդ կայաններ, սանլուս տուն:

Ղ. ունի զարգացման մեծ հեռանկարներ, նախատեսվում է նոր ձեռնարկությունների կառուցում, բնակչության զգալի աճ, կատարվում են քաղաքաշինական աշխատանքներ: Ղ-ի շրջագծի մեջ են մտել Աշոտավան, Կավարտ, Բարաբաթում, Բաղաբուրջ, Վաչագան, Ներքին Վաչագան, Բեխ, Շահարջիկ, Շահումյան, Աչախլու, Արփիկ, Լենինյան հանքեր բանավանները ու գյուղերը: Կառուցվել են նոր թաղամասեր. քաղաքը գազիֆիկացված է: Բնակելի ֆոնդը 25 հզ. մ$^2$-ից (1940) հասել է 300 հզ. մ$^2$ (1978): Ղ-ի կենտրոնական զբոսայգում կանգնեցվել են քաղաքացիական պատերազմում զոհվածների, Ղ-ի ընդհատակյա բոլշևիկյան կազմակերպության ղեկավար Բագրատ Հարությունյանի, Սովետական Միության հերոս Հունան Ավետիսյանի հուշարձանները: Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միանալու 150-ամյակի առթիվ կառուցվել է Դավիթ Բեկի հուշարձան կոթողը: Ղ-ում են ծնվել ՍՍՀՄ ԳԱ իսկական անդամ Ա. Ա. Արզումանյանը, ՍՍՀՄ պետ. մրցանակի դափնեկիր Տ. Անտոնյանը:

Քաղաքի առաջին գլխավոր հատակագիծը կազմվել է 1949-ին (ճարտ. Հ. Իսաբեկյան): 1960-ին մշակվել է նոր գլխավոր հատակագիծ 1985-ի հաշվարկային ժամկետով (ճարտ. Զ. Զախարյան և ուրիշներ): 1970-ից մշակվում է մեծ Ղափանի գլխավոր հատակագիծը (ճարտ. Պ. Թումանյան, Լ. Էյվազովա, Է. Տաշյան և ուրիշներ), իսկ 1977-ից՝ քաղաքի մանրամասն հատակագծման նախագիծը: Քաղաքի բնակելի շինարարությունը զարգանում է հիմնականում Ղ.—Քաջարան և Ղ-ից հս. ձգվող ավտոմայրուղու ուղղություններով: Ղ. կառուցապատված է բազմահարկ շենքերով և 1—2-հարկանի առանձնատներով: Հայաստանում առաջին անգամ Ղ-ում է իրականացվել սարալանջերի թեք հարթությունների վրա բազմահարկ շենքերի կառուցումը (մինչև 14 հարկ, ճարտ. Պ. Թումանյան, Ա. Վարդանյան և ուրիշներ): Ղ-ի հաս. կառույցներից են կապի հանգույցի շենքը (1959), շրջան. և քաղաք. սովետների գործադիր կոմիտեների շենքը (1965), «Կապան» ռեստորանը (1968), հյուրանոցը (1970), երաժշտ. դպրոցի շենքը (1972), մշակույթի պալատը (1977) ևն: Ղ-ում են Վ. Ի. Լենինի, Հ. Ավետիսյանի, Դավիթ Բեկի հուշարձանները (բոլորը՝ քանդակագործ Ս. Բաղդասարյանի):

*Ս. Կարապետյան, Վ. Ազշեհիրլյան*

Պատկերազարդումը տես 40-րդ էջից հետո՝ ներդիրում:

**«ՂԱՓԱՆ»**, երկօրյա թերթ: ՀԿԿ Ղափանի շրջանային կոմիտեի և ժողովրդական դեպուտատների Ղափանի շրջանային ու քաղաքային սովետների օրգան: Լույս է տեսնում 1930-ից, Ղափանում (1930—1935-ին՝ «Պայքար պղնձի համար», 1936—1941-ին, 1946—79-ին՝ «Պղնձի համար», 1979-ից՝ «Ղափան»): Լուսաբանում է շրջանի ու քաղաքի աշխատավորության, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների գործունեությունը տնտ. ու կուլտուրական շինարարության մեջ, հասարակական կյանքի բոլոր բնագավառներում: Ուշադրության կենտրոնում է պահում արդ. ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների աշխատանքները, սոցիալիստական մրցության, արտադրանքի որակի բարելավման հարցերը: «Ղ.» տեղեկություններ է հաղորդում նաև ՍՍՀՄ, Հայկական ՍՍՀ և արտասահմանյան երկրներում տեղի ունեցող կարևոր իրադարձությունների վերաբերյալ, ծանոթացնում քաղաքի ու շրջանի մշակութային, մարզական կյանքին, տալիս գրական էջեր:

*Վ. Մաղալյան*

**ՂԱՓԱՆԻ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ԳՈՐԾԱԴՈՒԼ 1907**, Ղափանի բանվորների մասսայական կազմակերպված ելույթ: Տեղի է ունեցել մարտի 22—29-ը: Կազմակերպել են ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի ներկայացուցիչներ Ա. *Վարդանյանը*, Ս. *Մարտիրոսյանն* ու Շաթալին: Գործադուլային կոմիտեն մշակել և հանքատերերին է ներկայացրել բանվորների պահանջները, որոնք հիմնականում տնտ. բնույթի էին (ութժամյա աշխատանքային օր, աշխատավարձի բարձրացում, տուգանքների վերացում, ձրի բուժսպասարկում, գիշերային հերթափոխի վերացում ևն): Ձեռնարկատերերը ոստիկանության օգնությամբ փորձել են ճնշել գործադուլը: Ձերբակալվել են գործադուլի ղեկավարներից մի քանիսը: Սակայն բանվորները շարունակել են գործադուլը և պահանջել արձակել ձերբակալված ընկերներին: Մարտի 29-ին ձեռնարկատերերը հարկադրված են եղել բավարարել բանվորների պահանջների մի մասը: Ղ. բ. գ. մեծ ազդեցություն է ունեցել շրջակա գյուղերի գյուղացիության վրա և հեղափոխական պայքարի հանել նրանց:

**ՂԱՓԱՆԻ ՇՐՋԱՆ**, վարչական շրջան Հայկական ՍՍՀ հարավ-արևելքում: Կազմվել է 1930-ի սեպտ. 9-ին: Սահմանակից է Սիսիանի, Գորիսի, Մեղրու շրջաններին, Ադրբ. ՍՍՀ-ին: Տարածությունը 1345 *կմ*$^2$ է, բն. 22,5 հզ. մարդ (առանց Ղափան քաղաքի, 1981): Վարչական կենտրոնը՝ Ղափան:

Քարտեզը տես 32-րդ էջից հետո՝ ներդիրում:

**Բնությունը**: Ղ. շ. գտնվում է Զանգեզուրի հվ. մասում, Ողջիի ավազանում: Մասնատված ռելիեֆով լեռնային շրջան է: Բնորոշ են ռելիեֆի էրոզիոն և տեղատարված ձևերը: Կան քարացրոններ: Շրջանի հս. մասում ձգվում է Բարգուշատի, հվ-ում՝ Մեղրու լեռնաշղթան, արմ-ում՝ Զանգեզուրի լեռնաշղթայի հվ. մասը, արլ-ում՝ Խուստուփ—Կատարի (Խուստուփ լեռ, 3202 *մ*) աղեղնաձև լեռնաշղթան: Վերջինս Ողջիի անտեցեղենտ հովտով բաժանվում է Խուստուփի և Կատար մասերի, որոնք ժայռոտ քարափներով իջնում են դեպի շրջակա հովիտները: Շրջանի ամենաբարձր կետը 3904 *մ* է (Կապուտջուղ): Նշանավոր են նաև Սիսակատար (3827,2 *մ*), Նահապետ (3509 *մ*) և այլ գագաթները: Արլ-ում, Բարգուշատի և Խուստուփ—Կատարի լեռնաշղթաների միջև, Ողջիի միջին հոսանքում, տեղադրված է Ղափանի գոգավորությունը: Ռելիեֆի բնորոշ ձևերից են կիրճերը (Հալիձոր ևն), լեռնանցքները (Դուբագի, Մազրայի ևն): Փոքրիկ հարթ տեղամասերը (Նարգիզների դաշտ ևն) զբաղեցնում են տարածքի 25%-ը: Ղ. շ. ՀՍՍՀ գունավոր մետալուրգիայի հումքի գլխավոր բազան է, որտեղ գտնվում են Քաջարանի պղնձամոլիբդենային, Ղափանի պղնձի և Շահումյանի անվ. բազմամետաղային հանքավայրերը: Կան նաև կրաքարի, բազալտի, կաոլինիտի ոչ մեծ հանքավայրեր, գիպսի, անհիդրիդի շերտեր: Հետախուզական աշխատանքներ են կատարվում Շիկահողի և Գեղիի հանքատար տեղամասերում: Ղ. շ. ՀՍՍՀ ակտիվ սեյսմիկ շրջաններից է: Հայտնի են 1931-ի և 1967-ի երկրաշարժերը: Ղ. շ-ի ցածրադիր վայրերին բնորոշ է չոր մերձարևադարձային, բարձրադիր վայրերին՝ ցուրտ կլիման: Տարեկան միջին ջերմաստիճանը ցածրադիր վայրերում 12°C է, բարձրադիր վայրերում՝ —4°C, հունվարինը՝ համապատասխանաբար 0°C, —14°C, հուլիսինը՝ 22°C, 6°C, առավելագույնը՝ 40°C, 22°C, նվազագույնը՝ —26°C, —42°C: Տարեկան տեղումները 500 *մմ* են, լեռների գագաթնամերձ գոտում՝ 850 *մմ*: Շրջանի տարածքով են հոսում Ողջի (Գեղի, Զեյվա, Վաչագան,

Գեղանուշ վտակներով), Շիկահող, Ծավ գետերը: Կան բազմաթիվ աղբյուրներ: Հայտնի են Ողջիի վերին հոսանքի շրջանում գտնվող «Թթուջուր» հանքային աղբյուրները: Զանգեզուրի բարձրադիր լեռնաշղթայում են Կապույտ լիճը և Ղազանգյոլը: Գերակշռում են լեռնանտառային, լեռնամարգագետնային դարչնագույն, ալպյան ճմատորֆային հողերն ու լեռնային սևահողերը: Տարածված են չորասեր ծառատեսակներն ու թփուտները, ենթալպյան մարգագետիններն ու ալպյան գորգերը:



Արջի կիրճը

Անտառները զբաղեցնում են 42034 *հա* (տարածքի ավելի քան 30%-ը): Հիմնական ծառատեսակներն են հացենին, բոխին, թխկին, կաղնին, սոսին, խնձորենին, տանձենին, ընկուզենին, հոնին, զկեռենին ևն: Լեռնային բարձրադիր շրջանները ծածկված են ալպյան բուսականությամբ: Ղ. շ-ի տարածքում է Շիկահողի արգելանոցը՝ Ծավի սոսիների պուրակի հետ: Կենդանիներից կան արջ, վայրի խոզ, այծյամ, վայրի ոչխար (մուֆլոն), քարայծ, գայլ, լուսան, հովազ, կզաքիս ևն: Շատ են թռչունները:

**Բնակչությունը**: Հիմնական մասը հայեր են: Բնակվում են նաև ադրբեջանցիներ, ռուսներ, ուկրաինացիներ: Խտությունը 1 *կմ²* վրա 42 մարդ է: Ունի շրջանային ենթակայության մեկ քաղաք (Քաջարան) և 50 գյուղական բնակավայր. Ագարակ, Աղվանի, Անտառաշատ, Աչիբաջ, Առաջաձոր, Արծվանիկ, Բահառլու, Գեղանուշ, Գեղի, Գյարդ, Գոմարան, Դավիթ Բեկ, Դովրուս, Եղվարդ, Լեռնաձոր, Խալաջ, Խդրանց, Ծավ, Կաղնուտ, Հաջաթին, Ձորաստան, Ղարատղա, Ղարաչիման, Ղոլշուտ, Ճակատեն, Մուսալլամ, Ներքին Գիրաթաղ, Ներքին Գյոդաքլու, Ներքին Խոտանան, Ներքին Հանդ, Նորաշենիկ, Շաբադին, Շիկահող, Շիշկերտ, Շրվենանց, Չայքենդ, Չափնի, Սրաշեն, Սևաքար, Սըզնակ, Վերին Գիրաթաղ, Վերին Գյոդաքլու, Վերին Խոտանան, Տանձավեր, Ուժանիս, Փայահան, Փիրիլու, Քիրս, Քյուրուտ, Օխտար:

**Պատմական ակնարկ**: Ղ. շ-ի տարածքում մարդը բնակություն է հաստատել դեռևս քարի դարում: Հայաստանում միասնական պետականության ստեղծումից (մ. թ. ա. VI դ.) հետո Ղ. շ-ի տարածքը Արտաշեսյանների և Արշակունիների հայկ. թագավորությունների մեջ էր և կազմում էր Սյունիք նահանգի Բաղք, Ձորք, մասամբ՝ Կովսական գավառների մասը: Հայոց Արշակունիների անկումից (428) հետո եղել է պարսկ., ապա՝ Արաբ. խալիֆայության (640—885) տիրապետության տակ: 886-ից մտել է հայ Բագրատունիների, 980-ից՝ Սյունիքի թագավորության կազմի մեջ, եղել նրա արքունի ոստանը: XI դ. Ձորք գավառը կոչվել է Կապան՝ նույնանուն քաղաքի անունով, որը գտնվում էր այժմյան Ղափան—Քաջարան երթուղու կիսաճանապարհին, Կապան (այժմ՝ Ողջի) գետի աջ ափին: 1103-ին Կապան գավառի տարածքը ենթարկվել է սելջուկ-թուրքերի ասպատակումներին, Կապան քաղաքը ավերվել է: Սյունյաց թագավորության մայրաքաղաք է դարձել Բաղաբերդը (Կապան քաղաքից ոչ հեռու, Ողջի գետի ափին): 1170-ին սելջուկ-թուրքերը գրավել են նաև Բաղաբերդը, ավարի մատնել այնտեղ պահվող 10 հզ. ձեռագիր: XIII դ. 30-ական թթ. Սյունիքը (այդ թվում և Ղ. շ-ի տարածքը) գրավել են մոնղոլ-թաթարները: Այդ շրջանում տնտ. կարևոր նշանակություն ունեին Աճանանի պղնձի հանքերը: Գործում էր պղնձաձուլարան՝ Քյարխանա անունով (ավերակները պահպանվել են Ղափան քաղաքի մոտակայքում): XV դ. Ղ. շ-ի տարածքը եղել է կարա-կոյունլուների և ակ-կոյունլուների տիրապետության տակ:

XV դարից հետո Ղ. շ-ի տարածքը մտել է Բեխի մելիքության կազմի մեջ: 1639-ին, Թուրքիայի և Իրանի միջև կնքված պայմանագրով, Ղ. շ-ի տարածքը, Զանգեզուրի մյուս գավառների հետ, անցավ Իրանին, իսկ XVIII դ. 1-ին քառորդում մտնում էր Դավիթ Բեկի իշխանության կազմի մեջ: 1730-ին Ղափանը գրավեցին թուրք. զորքերը, 1735-ին՝ Իրանի Նադիր շահը: Պարսկ. գերիշխանության շրջանում Ղ. շ-ի տարածքը կազմում էր Ղափանի մահալի մասը: 1805-ին այն միացվեց Ռուսաստանին և 1829-ից ընդգրկվեց Ղարաբաղի նահանգի կազմի մեջ: 1861-ից կազմել է Ելիզավետպոլի նահանգի Զանգեզուրի գավառի մասը:

Հեղափոխական-բանվորական շարժումները Ղ. շ-ում սկսվել են XX դ. սկզբներին: Հայտնի է Ղափանի պղնձահանքերի բանվորների գործադուլը (տես *Ղափանի բանվորների գործադուլ 1907*), որը ավարտվեց հաղթանակով: Բանվորական շարժումները Ղ-ի շրջանում նոր թափ ստացան Ռուսաստանում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո: 1919-ին Ղափանում ստեղծվեցին կոմունիստական բջիջներ, որոնք և 1920-ին ղեկավարում էին աշխատավորների ելույթները՝ դաշնակների տիրապետության դեմ: 1920-ի հուլիսի 11-ին նրանց օգնության եկած կարմիր բանակի մի զորամաս մտավ Ղափան: Շրջանում հռչակվեց սովետական իշխանություն, կազմվեց հեղկոմ՝ Բ. Հարությունյանի ղեկավարությամբ: Սակայն նույն թվի հոկտեմբերին դաշնակցական կառավարությանը հաջողվեց վերականգնել իրենց իշխանությունը Ղափանում: 1921-ի հուլիսին Ղ. շ-ում վերջնականապես հաստատվեցին սովետական կարգեր:

Մինչև 1981-ի սկիզբը Ղափանի կուսակցական շրջանային կազմակերպությունում տեղի է ունեցել 41 կոնֆերանս, 100 սկզբնական կուսակցական կազմակերպություններում ընդգրկված էր 3900 կոմունիստ, իսկ 157 ԼԿԵՄ կազմակերպություններում՝ 12620 կոմերիտական:

**Տնտեսությունը**: Առաջատար ճյուղը արդյունաբերությունն է, հատկապես՝ հանքարդյունաբերությունը: Առաջին համաշխարհային պատերազմի ու դաշնակցական իշխանության տարիներին խիստ անկում ապրող պղնձարդյունաբերությունը վերականգնվեց միայն սովետական կարգեր հաստատվելուց հետո: Շրջանում ստեղծված առաջին արդ. ձեռնարկությունը փայտամշակման արտելն էր, որի բազայի վրա հետագայում ստեղծվեց կահույքի ֆաբրիկան: Գործում են պղնձամոլիբդենային կոմբինատը (տես *Պղնձամոլիբդենային գործարան Քաջարանի*), շինարարական իրերի, մսի կոմբինատները, կաթի, գարեջրի գործարանները, «Հայգյուղտեխնիկա»-ի շրջանային բաժանմունքը, կենցաղսպասարկման կոմբինատը, շինվերանորոգման տեղամասը, ճանապարհների շահագործման և շինարարության Ղափանի տեղամասը, շարժական մեքենայացված շարասյունը (ՇՄՇ): Քաջարան քաղաքում գործում է տրիկոտաժի գործարանի մասնաճյուղը: Շրջանում կա 125 հիմնարկ-ձեռնարկություն: Ղ. շ-ի բնակավայրերը միավորված են 8 կոլեկտիվ և 7 սովետական տնտեսություններում: Կա մեկ մեղվաբուծական տնտեսություն: Շրջանի հողային ֆոնդը 134484 *հա* է, որից վարելահող՝ 69337 *հա*, անտառներ՝ 42034 *հա*, արոտավայրեր՝ 21667 *հա*, խոտհարքներ՝ 1631 *հա*, պտղատու և խաղողի այգիներ՝ 280 *հա*: Ոռոգվող հողատարածությունները կազմում են 1052 *հա*: Գործում են Սյունիքի, Նորաշենիկի, Ծավի ջրհան կայանները, կառուցվելու են Գեղիի և Դավիթ Բեկի ջրամբարները:

Գյուղատնտեսության հիմնական ճյուղը անասնապահությունն է, որը տալիս է գյուղատնտ. արտադրանքի 60—70%-ը: Շրջանում կա 18900 խոշոր, 48 հզ. մանր եղջերավոր անասուն, 4200 խոզ:

**Տրանսպորտը**: Ղափան—Մինջևան երկաթուղով կապվում է Երևան—Բաքու երկաթուղու հետ: Խճուղային ճանապարհների երկարությունը 270,5 *կմ* է, որից 134,7 *կմ*՝ կոշտ ծածկով: Օդային մշտական կապ կա Երևանի հետ:

**Առողջապահությունը**: Բացի Ղափան և Քաջարան քաղաքների բուժհիմնարկներից շրջանում գործում են գյուղական տեղամասային 3 հիվանդանոց (75 մահճակալով), 2 ամբուլատորիա, 9 դեղատուն, 42 բուժմանկաբարձական կետ: Կա 160 բուժաշխատող, որից 7-ը՝ բժիշկ:

**Մշակույթը**: Ղ. շ. հարուստ է միջնադարյան ճարտ. հուշարձաններով՝ Բաղաբերդ (IV—XI դդ.), Երիցավանք (V—XI դդ.), Վահանավանք (X դ.), Տանձափարախի անապատ (XVII դ.), Հալիձորի բերդ (XVII—XVIII դդ.): Ուշ միջնադարից պահպանվել են բազմաթիվ եռանավ բազիլիկներ (Լեռնաձոր, Եղվարդ, Նորաշենիկ ևն), կամուրջներ (Բաղաբուրջ, Կեմանց, Ճակատեն, Զրափոր), ձիթհաններ:

1978—79 ուս. տարում շրջանում գործում էին 26 միջնակարգ (3-ը՝ երեկոյան), 29 ութամյա, 5 տարրական, 2 երաժշտական, 2 նկարչական, 3 սպորտային դպրոցներ (13 հզ. աշակերտ, 1204 ուսուցիչ, որից 742-ը՝ բարձրագույն կրթությամբ), 30 մսուր-մանկապարտեզ, երաժշտական, բժշկ., 2 պրոֆտեխնիկական ուսումնարաններ, լեռնամետալուրգիական, շինարարական տեխնիկումներ: Ղ. շ-ում են ՀՍՍՀ ԳԱ հաշվողական կենտրոնի Քաջարանի բարձունքային ավտոլաբորատորիան, միկրոբիոլոգիայի ինստ-ի Քաջարանի հանքային միկրոբիոլոգիայի լաբորատորիան, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի Պետպլանի գիտատեխնիկական ինֆորմացիայի և տեխնիկա-տնտեսական հետազոտությունների ԳՀԻ-ի Ղափանի բաժանմունքը: Շրջանում գործում են 18 կապի բաժանմունք, 65 գրադարան, պետ. թատրոն, 8 կուլտուրայի տուն, 63 ակումբային հիմնարկ, 14 կինոսարք: 1930 թվականից լույս է տեսնում «*Ղափան*» շրջանային թերթը: Ամենօրյա հաղորդումներ է տալիս «Ղափանյան կյանք» ռադիոխմբագրությունը: Շրջանի բոլոր բնակավայրերը գազիֆիկացված են:

Պատկերազարդումը տես 6-րդ հատորի 704—705-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակ XXVII:

**ՂԱՓԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԹԱՏՐՈՆ** Ա. Շիրվանզադեի անվան, հիմնադրվել է 1935-ին՝ որպես Զանգեզուրի միջշրջանային թատրոն, Սուրեն Միրզոյանի նախաձեռնությամբ (ռեժիսորն ու առաջին դիրեկտորը): Բացվել է Ա. Գուլակյանի «Արշալույսին» պիեսի ներկայացումով: Լավագույն դերասան-դերասանուհիներից էին Վ. Բալայանը, Ա. Տոնոյանը, Խ. Սարգսյանը, Ա. Հարությունյանը, Մ. Հարությունյանը, Տ. Հակոբյանը, ռեժիսորներից՝ Զ. Ժամհարյանը, Բ. Շաքարյանը, ՀՍՍՀ վաստակավոր գործիչ Տ. Վարդապետյանը և ուրիշներ: Բեմադրություններից են «Չար ոգի», «Նամուս» (ըստ Շիրվանզադեի), Մուրացանի «Ռուզան», Գոլդոնիի «Վենետիկյան երկվորյակներ», Սունդուկյանի «Խաթաբալա» ևն: 1951-ին թատրոնը փակվել է, 1958-ին կրկին բացվել Գ. Բորյանի «Նույն հարկի տակ» ներկայացումով: Թատրոնի գլխավոր ռեժիսորն էր ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ Ա. Մարտիրոսյանը, բեմադրող ռեժիսորը՝ Լ. Մարտիրոսյանը: Դերասանական կազմը համալրվել է Երևանի գեղարվեստա-թատերական ինստ-ի շրջանավարտներով՝ Ա. Մանուկյան, Ե. Ղազանչյան, Գ. Մանուկյան, Գ. Նովենց, Ա. Քոչարյան, Բ. Ղազյան և ուրիշներ: 1960-ական թթ. լավագույն բեմադրություններից են Գոլդոնիի «Երկու տիրոջ ծառան», Շիրվանզադեի «Պատվի համար» (երկուսն էլ՝ ռեժիսոր Ն. Բաղդասարյան), Շիլլերի «Սեր և խարդավանք», ՀՍՍՀ վաստ. արտիստ Գ. Գևորգյանի «Կապույտ ձիավորը»: Թատրոնի ներկայիս կազմում են ՀՍՍՀ վաստ. արտիստներ Մ. Ղազարյանը, Ա. Մարտիրոսյանը, Ա. Հարությունյանը, դերասաններ Ա. Ավագյանը, Ս. Բաղդասարյանը, Վ. Սարգսյանը, Է. Գալստյանը, Օ. Մկրտչյանը և ուրիշներ: Գլխավոր ռեժիսորն է Ս. Գայամյանը, նկարիչը՝ Ռ. Կամոյանը: Վերջին շրջանի լավագույն բեմադրություններից են Սովաժոնի «Չաո», Շիրվանզադեի «Արմենուհի», Զ. Խալափյանի «Դպրոցական կատակերգություն»:

*Մ. Հարությունյան*

Տեսարան Շիրվանզադեի «Արմենուհի» պիեսի բեմադրությունից (1959, ռեժիսոր՝ Ա. Մարտիրոսյան)

**ՂԱՓԱՆԻ ՊՂՆՁԻ ՀԱՆՔԱՎԱՅՐ**, գտնվում է Ղափան քաղաքից 3—4 *կմ* հյուսիս, Կավարտ գետի վերին հոսանքում: Հայտնի է 150 տարուց ի վեր. 1846-ից մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը մշակել են մասնավոր ձեռնարկատերերը: Հանքավայրի սիստեմատիկ ուսումնասիրման, հետախուզման և մշակման աշխատանքները սկսվել են Հայաստանում սովետական իշխանություն հաստատվելուց հետո: Շրջանի և հանքադաշտի երկրաբանական կառուցվածքն ու հանքայնացման տեղայնացման օրինաչափությունները հանգամանորեն նկարագրված են Վ. Ն. Կոտլյարի, Յու. Ա. Արապովի, Ի. Գ. Մաղաքյանի, Ս. Ս. Մկրտչյանի, Բ. Ս. Վարդապետյանի, Ա. Ե. Քոչարյանի, Ս. Ս. Վանյուշինի և բազմաթիվ այլ հետազոտողների աշխատություններում: Հանքադաշտը գտնվում է հս-արմ. տարածման Ղափանի անտիկլինալի սահմաններում, որը կազմված է միջին և վերին յուրայի հրաբխածին ու հրաբխածին-նստվածքային հաստվածքներից: Այդ անտիկլինալային ստրուկտուրայի միջուկում մերկանում են շրջանի ամենահին՝ ստորին բայոսի անդեզիտային ու անդեզիտա-բազալտային պորֆիրիտները, իսկ թևերում՝ վերին բայոսի հրաբխածին-նստվածքային հզոր շերտախումբը, ներկայացված ստորին մասում՝ անդեզիտային ու անդեզիտա-դացիտային պորֆիրիտներով, իսկ վերին մասում՝ անդեզիտա-դացիտային քվարցային («Բարաբաթումի») պորֆիրիտներով, ավազաքարերի, տուֆերի ու տուֆավազաքարերի շերտաշարերով և ոսպնյակներով: Հանքայնացման վերահսկման մեջ առանձնապես մեծ է հս-արմ. տարածման խզումնային խախտումների դերը, որոնց հարում է շրջանի հանքաբեր տեղամասերի համարյա 80%-ը: Հս-արմ. և հս-արլ. խախտումներով սահմանափակված բլոկներում ընդգրկված լայնակի խախտումները հանքապարունակող ստրուկտուրաներ են և պայմանավորում են հանքայնացման մորֆոլոգիական (երակային) տիպը: Ղափանի հանքադաշտը գրավում է մի քանի տասնյակ *կմ*² մակերես և ձգված է համանուն անտիկլինալի առանցքի երկայնությամբ: Հանքայնացումը ներկայացված է երակային և շտոկվերկային մարմիններով. ամենաինտենսիվ հանքայնացումը զարգացած է Ղափան քաղաքից դեպի հս-արմ. և կազմում է մոտավորապես 4 *կմ* երկարության ու 2—2,5 *կմ* լայնության մի գոտի, որի սահմաններում, Մեծ Մաղարայի խախտման զոնայի երկայնությամբ, տեղադրված են հիմնական հանքաբեր տեղամասերը: Հանքավայրի կենտրոնական մասում հայտնի են 450-ից ավելի արդ. նշանակության հանքային երակներ, որոնք ըստ տարածման և խորության հետամտվում են 100—250 *մ*: Ղափանի հանքադաշտում հանքայնացման հետամտված խորությունը մոտավորապես 500 *մ* է: Հանքանյութերի գլխավոր միներալներն են քվարցը, պիրիտը և խալկոպիրիտը, որոնք ուղեկցվում են սֆալերիտով, գալենիտով, բոռնիտով, էնարգիտով, խունացած հանքանյութերով, ալթայիտով, հեսսիտով ևն, իսկ երակային միներալներից՝ կալցիտով, գիպսով, դոլոմիտով, սիդերիտով, բարիտով: Հանքանյութերն ունեն բազմափուլ բնույթ և ձևավորվել են մեկը մյուսին աստիճանաբար հաջորդող միներալանստեցման յոթ փուլերի ընթացքում: Հետազոտողների մեծամասնության կարծիքով, Ղափանի արդ. հանքայնացումն առաջացման պայմաններով դասվում է միջին ջերմաստիճանային հիդրոթերմալ հանքավայրերի տիպին և սերտորեն կապված է միջին յուրայի հրաբխային գործունեության հետ: Հանքավայրի հեռանկարները կապված են հանքային շրջանի մանրազնին երկրաբանական ուսումնասիրությունների և հանքադաշտի հս. թևերի ու խոր հորիզոնների հետախուզման հետ:

**ՂԱՓԱՆՑՅԱՆ** Արփենիկ Գրիգորի (ծն. 12.11.1923, Երևան), *հայ սովետական նկարիչ*: 1954-ին ավարտել է Երևանի գեղարվեստա-թատերական ինստ-ը: Աշխատում է դիմանկարի, նատյուրմորտի և բնանկարի ժանրերում: Ղ-ի գեղանկարչությանը բնորոշ է հոգեբանական խորու-

Ա. Ղափանցյան. «Մայրն ու երեխան» (1960)

թյունն ու քնարականությունը: Լավագույն աշխատանքներից են «Պատանի նկարչուհին» (1959), «Մայրն ու երեխան» (1960), «Նատյուրմորտ, մրգեր» (1962), «Լիլիթի դիմանկարը» (1966), «Դվինի բնապատկեր» (1967), «Տաթևի լեռները» (1969): 1962-ին Երևանում մասնակցել է «Հինգի» (Մ. Ավետիսյան, Լ. Բաժբեուկ-Մելիքյան, Ա. Գրիգորյան, Հ. Սիրավյան) ցուցահանդեսին:


Գ. Ա. Ղափանցյան


Հ. Մ. Ղափլանյան

**ՂԱՓԱՆՑՅԱՆ** Գրիգոր Այվազի [17(29).2. 1887, Աշտարակ —3.5.1957, Երևան], հայ սովետական լեզվաբան: ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1942): Բանասիրական գիտ. դ-ր (1942), պրոֆեսոր՝ (1930): ՀՍՍՀ ԳԱ հիմնադիր կազմի անդամ, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1943): Սովորել է տեղի երկդասյան դպրոցում, 1899-ին մեկնել է Պետերբուրգ՝ ուսումը շարունակելու: 1908-ին ավարտել է արական գիմնազիան, 1913-ին՝ Պետերբուրգի համալսարանի արլ. ֆակուլտետի հայ-վրաց-պարսկական բաժինը, աշակերտել Ն. *Մառին*, Կ. Զալեմանին, Ի. Բոդուեն դե Կուրտենեին, Ն. Ադոնցին, Ի. Ջավախիշվիլուն: Վերադառնալով հայրենիք՝ աշխատանքի է անցել Էջմիածնի Գևորգյան ճեմարանում: 1914-ին տպագրվել է Ղ-ի գիտական առաջին գործը՝ «Լեզվաբանական դիսցիպլինաներ և լեզու»: Այդ տարիներից մասնակցել է Անիի՝ Ն. Մառի ղեկավարած պեղումներին: 1921-ին հրավիրվել է Երևանի համալսարան և դարձել հիմնադիր դասախոսներից մեկը: Երկար տարիներ ղեկավարել է լեզվաբանության ամբիոնը (1920—54), դասավանդել ընդհանուր լեզվաբանություն, գրաբար և այլ առարկաներ: Շուրջ հինգ տարի եղել է Հայաստանի ԳԱ հասարակական գիտությունների բաժանմունքի վարիչը, 1950—56-ին՝ ՀՍՍՀ ԳԱ լեզվի ինստ-ի դիրեկտորը:

Ղ. զբաղվել է հայագիտության տարբեր հարցերով, լուծել հայոց լեզվի պատմության, հնագիտության կարևոր խնդիրներ: Տիրապետելով փոքրասիական մի շարք մեռած լեզուների (խեթերեն, ուրարտերեն, խուռիերեն, պալայերեն)՝ Ղ. սեպագիր արձանագրությունների խորազնին ուսումնասիրությամբ պարզել է հայերի էթնիկական կապերը հարևան ժողովուրդների հետ, լեզվական փոխառություններն ու փոխազդեցությունները: Այդ առումով ուշադրության արժանի է «Chetto-armeniaca» (1931) մենագրությունը, որտեղ քննել է հայերենի և խեթերենի շուրջ 200 բառեր ու ձևեր, լուսաբանել փոքրասիական մի շարք ժողովուրդների մշակույթի ու պատմության բարդ հարցեր: Աշխատելով Ն. *Մառի* հետ՝ Ղ. աստիճանաբար հեռացել է երիտքերականության դիրքերից և հարել Մառի սկզբունքներին. դա իր արտահայտությունն է գտել «Ընդհանուր լեզվաբանության» (1939) մեջ: Այս աշխատությունը ընդհանուր լեզվաբանության հայերեն առաջին ձեռնարկն է, որը փաստական հարուստ նյութ է պարունակում և տրամաբանական կուռ կառուցվածք ունի: Այստեղ արդեն Ղ. լեզուն բնորոշում է որպես պատմահասարակական երևույթ: Ընդունելով Ն. Մառի որոշ դրույթներ՝ Ղ., այնուամենայնիվ, շատ հարցերում (հնչյունափոխական օրենքներ) հեռացել է նրանից: «Ուրարտուի պատմությունը» (1940) մանրազնին ու բազմակողմանի ուսումնասիրություն է այդ պետության մշակույթի, սոցիալ-քաղաքական կյանքի և ուրարտերենի վերաբերյալ: «Լեզվական ընդհանուր տարրեր ուրարտական և խեթական լեզուների միջև» (1936), «Հին Հայաստանի տեղանունների պատմա-լեզվաբանական նշանակությունը» (1940), «Խեթական աստվածները հայերի մոտ» (1940), «Հայերենի խուռիտերեն բառերը» (1951), «Ածանցները և ածանցված բառերը հին Փոքր Ասիայի տեղանուններում» (1948) և այլ աշխատություններում Ղ. հանգել է այն եզրակացության, որ փոքրասիական լեզուները հայերենի մեջ թողել են իրենց հետքերը (տեղանուններ, բայեր, մասնիկներ ևն): Հնագույն բառերի ստուգաբանությամբ Ղ. քննել է նաև հայերենի աղերսը կովկասյան լեզուների հետ («Հայերենի և լազո-մեգրելական լեզուների փոխհարաբերության մասին», 1952), անդրադարձել հայերենի և վրացերենի (հատկապես արմ. ճյուղի լեզուների) առնչություններին: «Հայասան՝ հայերի բնօրրան» (1947) աշխատությունը հայասա-ազգի ցեղերի որոշ տվյալների պատմական ու լեզվաբանական քննությունն է: Մի կողմից նա քննել է Հայասա-Ազզի պետության քաղաքական-մշակութային հարաբերությունները հին փոքրասիական ժողովուրդների հետ, մյուս կողմից ձգտել է որոշել այդ ցեղերի ու նրանց լեզուների դերը հայ ժողովրդի և հայոց լեզվի կազմավորման ընթացքում, փորձել է տեսականորեն հիմնավորել լեզուների խաչավորման տեսությունը՝ հայոց լեզվի միջոցով, այն համարելով ասիանական-կովկասյան-հնդեվրոպական լեզու: Ղ. անդրադարձել է նաև բարբառագիտական հարցերի, մանրամասն նկարագրել Աշտարակի խոսվածքը:

Ղ-ի վերջին աշխատությունը «Հայոց լեզվի պատմությունն» է (հրտ. 1961), որտեղ քննության են առնված հայ ժողովրդի և հայերենի կազմավորման հարցերը, հայոց լեզվի հնդեվրոպական նստվածքը:

*Երկ.* Արա Գեղեցիկի պաշտամունքը, Ե., 1944: Историко-лингвистические работы, т. 1—2, Е., 1956—75.

*Գրկ.* Գիրգոր Այվազի Ղափանցյան (գիտական գործունեության համառոտ ակնարկ), Ե., 1959: Աղայան Է., Հայ լեզվաբանության պատմություն, հ. 2, Ե., 1962:

*Կ. Դուրգարյան*

**ՂԱՓԼԱՆՅԱՆ** Հրաչյա Մկրտչի [ծն. 14.12. 1923, գ. Գյառգյառ (այժմ՝ ՀՍՍՀ Ստեփանավանի շրջանում)], հայ սովետական ռեժիսոր, դերասան և դրամատուրգ: ՍՍՀՄ ժող. արտիստ (1971): ՍՄԿԿ անդամ 1947-ից: Բեմ է բարձրացել 1935-ին, Լենինականի դրամատիկական թատրոնում, ուր աշխատել է մինչև 1938-ը, ապա՝ Երևանի պատանի հանդիսատեսի թատրոնում: 1940-ին ավարտել է Երևանի թատերական ուսումնարանը: 1942—45-ին ծառայել է սովետական բանակում, հետո՝ մինչև 1952-ը կրկին աշխատել նույն թատրոնում որպես դերասան և ռեժիսոր: 1952—53-ին ստաժավորվել է Մոսկվայի Գեղարվեստական թատրոնում: 1953—1958-ին եղել է Երևանի պատանի հանդիսատեսի թատրոնի գլխավոր ռեժիսորը, 1958—60-ին՝ Գ. Սունդուկյանի անվ. թատրոնի ռեժիսոր, 1960—62-ին՝ կրկին պատանի հանդիսատեսի թատրոնի գլխավոր ռեժիսոր, նաև դիրեկտոր, 1962—65-ին՝ Սպենդիարյանի անվ. օպերայի և բալետի թատրոնի գլխավոր ռեժիսոր: 1965-ից Հայկ. թատերական ընկերության վարչության նախագահն է: 1965-ին Ղ-ի նախաձեռնությամբ ընկերությանը կից կազմակերպվել է ստուդիա-թատրոն (1969-ից՝

Տեսարաններ Հ. Ղափլանյանի բեմադրություններից. վերևից՝ Ս. Դանգուլովի «Ճանաչում» (1970, ՍՍՀՄ Փոքր թատրոն, Մոսկվա), Հ. Պարոնյանի «Ատամնաբույժն արևելյան» (1 76, Երևանի դրամատիկական թատրոն), Շեքսպիրի «Կորիոլան» (1978, Գ. Սունդուկյանի անվ. թատրոն, Երևան)







*Երևանի դրամատիկական թատրոն*), որի դիրեկտորն ու գեղարվեստական ղեկավարն է: 1973—75-ին միաժամանակ եղել է Գ. Սունդուկյանի անվ. թատրոնի դիրեկտորը, 1977—79-ին՝ նաև գլխավոր ռեժիսորը:

Ղ. պատանի հանդիսատեսի թատրոնում խաղացել է շուրջ 60 դեր. Տրուֆալդինո (Գոլդոնիի «Երկու տիրոջ ծառան»), Գիքոր («Գիքոր», ըստ Հ. Թումանյանի), Վանյա Սոլնցև («Գնդի որդին», ըստ Վ. Կատաևի), Տյուլենին («Երիտասարդ գվարդիա», ըստ Ա. Ֆադեևի) ևն: Ղ-ի բեմադրությունները թատերարվեստի արդի նվաճումներից են, աչքի են ընկնում վառ թատերայնությամբ, պատկերավոր բեմավիճակներով: Լավագույններից են. Երևանի պատանի հանդիսատեսի թատրոնում՝ Շիլլերի «Սեր և խարդավանք» (1955), Գ. Ցաղյանի «Գիշերային հրաշք» (1960), «Արտիստը» (1955, ըստ Շիրվանզադեի), Ս.Միխալկովի «Սոմբրերո» (1961) ևն, դրամատիկական թատրոնում՝ Ֆ. Գուդրիչի և Ա. Հակկետի «Աննա Ֆրանկի օրագիրը» (1968), Կ. Խոյինսկու «Գիշերային պատմություն» (1968), Ի. Շտոկի «Աստվածային կատակերգություն» (1968), Ա. Օստրովսկու «Անօժիտը» (1970), Ե. Օտյանի և Մ. Կյուրճյանի «Սեր և ծիծաղ» (1970), Շեքսպիրի «Ռիչարդ III» (1972), Հ. Պարոնյանի «Ատամնաբույժն արևելյան» (1976) ևն, օպերայի և բալետի թատրոնում՝ Ի. Ստրավինսկու «Էդիպ արքա» (1963), Լ. Բեռնստայնի «Վեստ-Սայդյան պատմություն» (1963) ևն, Սունդուկյանի անվ. թատրոնում՝ Շեքսպիրի «Օթելլո» (1970), «Կորիոլան» (1978): Մոսկվայի Լենինյան կոմերիտմիության անվ. թատրոնում բեմադրել է Ա. Արաքսմանյանի «Քո սրտի կրակը» (1959), Գ. Ցաղյանի «Գիշերային հրաշք» (1959), Փոքր թատրոնում՝ Լ. Ուկրաինկայի «Քարե տերը» (1971), Ս. Դանգուլովի «Ճանաչում» (1970), Կախեթանգովի անվ. թատրոնում՝ Շեքսպիրի «Ռիչարդ III» (1977), Բրատիսլավայի ազգային թատրոնում՝ Լ. Տոլստոյի «Կենդանի դիակ» (1976) պիեսները:

Հեղինակ է «Իմ ընկերները» (1958) պիեսների ժողովածուի ու բազմաթիվ բեմականացումների: 1975-ից Ղ. դերասանի վարպետություն է դասավանդում Երևանի գեղարվեստա-թատերական ինստ-ում: Եղել է ՍՍՀՄ IX—X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Արժանացել է ՀՍՍՀ պետ. մրցանակների (1975, 1979):

Պարգևատրվել է Ժողովուրդների բարեկամության շքանշանով:

*Գրկ.* Ռ ի զ ա և Ս., Հրաչյա Ղափլանյան, Ե., 1969: *Ս. Հարդենյան*

**ՂԱՖԱԴԱՐՅԱՆ** Կարո Գրիգորի (20.4. 1907, Ախալցխա —21.12.1976, Երևան), հայ սովետական հնագետ, պատմաբան, վիմագրագետ, բանասեր: Պատմական գիտ. դ-ր (1954), պրոֆեսոր (1957), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1961): 1931-ին ավարտել է Երևանի համալսարանի պատմագրական ֆակուլտետը, եղել է Էջմիածնի մատենադարանի գիտական աշխատող, զբաղվել հայկ. հին ձեռագրերի ուսումնասիրությամբ: 1932-ից աշխատել է ՀՍՍՀ կուլտուրայի պատմության ինստ-ում, մասնակցել Հայաստանի հնավայրերի (Շենգավիթ, Վաղարշապատ ևն) հետախուզական աշխատանքներին ու պեղումներին: Նրա առաջին աշխատությունը («Հայկական գրի սկզբնական տեսակները») ձեռագիր վիճակում 1935-ին արժանացել է Մելքոնյան ֆոնդի մրցանակի: 1930-ական թթ. կեսերից Ղ. ձեռնարկել է *Թ. Թորամանյանի* հետազոտությունների ի մի բերման, ծանոթագրման և տպագրության պատրաստման գործին: 1940—65-ին Ղ. եղել է Հայաստանի պետ. պատմական թանգարանի դիրեկտոր: Նրա անմիջական ղեկավարությամբ 30 տարի շարունակ պեղվել և հետազոտվել են Դվինի ավերակները, հայտնաբերվել հարուստ նյութեր, որոնք մեծ նշանակություն ունեն ոչ միայն Հայաստանի, այլև Անդրկովկասի ու Մերձավոր Արևելքի միջնադարյան քաղաքների պատմության, տնտ. կյանքի, կենցաղի և մշակույթի ուսումնասիրության համար: Ղ. միաժամանակ եռանդուն մասնակցություն է ունեցել Հայաստանում կատարվող հնագիտական աշխատանքներին (պատմական հուշարձանների պահպանություն, այլ հնավայրերի պեղումներ ևն): Նա հեղինակ է միջնադարյան Հայաստանի ճարտ. հուշարձաններին, դրանց հարդարավոր վիմական արձանագրությունների վերծանմանն ու այլ հարցերի նվիրված մի շարք գրքերի ու հոդվածների: Առանձնապես արժեքավոր է Դվինի պեղումների արդյունքներն ամփոփող և ընդհանրացնող երկհատոր աշխատությունը:

Կ. Գ. Ղաֆադարյան

Մ. Ն. Ղաֆուրի

Ղ. երկար տարիներ միջնադարյան հնագիտության դասընթաց է վարել Երևանի համալսարանում, Խ. Աբովյանի անվ. հայկական մանկավարժական ինստ-ում: 1958-ից եղել է «ՊԲՀ»-ի խմբագրական կոլեգիայի անդամ: 1959-ից մինչև կյանքի վերջը ղեկավարել է ՀՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստ-ի միջնադարյան հնագիտության բաժնի աշխատանքները, պատրաստել հնագետ կադրեր:

Ղ. պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի և «Պատվո նշան» շքանշաններով, արժանացել ՀՍՍՀ ԳԱ Նախագահության «Մեծարման գրին» (1974):

*Երկ.* Հայկական գրի սկզբնական տեսակները, Ե., 1939: Աքիմիան պատմական Հայաստանում, Ե., 1940: Հովհաննավանքը և նրա արձանագրությունները, Ե., 1948: Դվին քաղաքը և նրա պեղումները, [հ.] 1, Ե., 1952: Սանահին վանքը և նրա արձանագրությունները, Ե., 1957: Հաղբատ. Ճարտարապետական կառուցվածքները և վիմական արձանագրությունները, Ե., 1963: Երևան. Միջնադարյան հուշարձանները և վիմական արձանագրությունները, Ե., 1975:

*Գրկ.* Ա ռ ա ք ե լ յ ա ն Բ., Կարո Ղաֆադարյան, «ՊԲՀ», 1976, № 4:
*Ս. Ղանալանյան*

**ՂԱՖՈՒՐԻ** Մաժիտ (Գաբդուլմաժիտ) Նուրդանիևիչ (1880—1934), բաշկիրական և թաթարական սովետական բանաստեղծ: Բաշկիրական սովետական գրականության հիմնադիր: Բաշկիրական ՍՍՀ ժող. բանաստեղծ (1923): 1905—07-ի հեղափոխության նախօրեին հանդես է եկել որպես գրող-լուսավորիչ («Սիբիրյան երկաթգիծ», 1904, բանաստեղծությունների ժողովածու): Ռեակցիայի տարիներին «Իմ երիտասարդ կյանքը» (1906) և «Սեր ազգի նկատմամբ» (1907) բանաստեղծությունների ժողովածուները բռնագրավվել են: Ղ. ողջունել է Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը («Կարմիր դրոշ», 1917, ժողովածու): Նրա լավագույն ստեղծագործությունները գրված են սովետական շրջանում («Բանվոր», 1921, պոեմ, «Կարմիր աստղ», 1926, պիես, «Սևադեմ մարդիկ», 1927, «Կյանքի աստիճանները», 1930, վիպակներ ևն): Ղ. ազգային մանկական գրականության հիմնադիրներից է:

*Երկ.* Избранное, Уфа, 1955.

**«ՂԵԿԻ ՄՈՏ»**, շաբաթաթերթ: ՀՍՍՀ ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության և կապի աշխատողների, ավտոմոբիլային տրանսպորտի ու խճուղային ճանապարհների բանվորների արհմիության հանրապետական կոմիտեի օրգան: Լույս է տեսել 1957—63-ին, Երևանում: Լուսաբանել է ավտոտրանսպորտային և կապի ձեռնարկությունների աշխատանքները, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կյանքը:

**ՂԵՎՈՆԴ**, Ղ և վ ո ն դ Մ ե ծ, Ղ և վ ո ն դ Ե ր և ց, Ղ և վ ո ն դ պ ա տ մ ի չ (ծն. և մահ. թթ. անհտ.), VIII դարի հայ պատմիչ: Սովորել է Դվինի հայրապետանոցում: Եղել է Կ. Պոլսում և որոշ նյութեր հավաքել իր երկասիրության համար, որն ավարտել է մոտ 790-ին: «Պատմությունը» գրելիս մասամբ օգտագործել է նախորդ մատենագիրների գործերը, բայց հիմնականում շարադրել որպես ականատես: Շարունակել է *Սեբեոսին*՝ սկսելով մոտ 640-ական թթ. դեպքերից և ավարտել VIII դ. սկզբին Հայաստանի արաբ. նվաճմամբ: Մանրամասն նկարագրել է 703, 747—750 և 774—775-ի հայոց ապստամբությունները, անդրադարձել արաբաբյուզանդական հարաբերություններին: Կողմնակից է հայ Բագրատունիների զգուշավոր քաղաքականությանը: Ղ-ի երկը կարևոր սկզբնաղբյուր է Հայաստանի VII—VIII դդ. պատմությունն ուսումնասիրելու համար: Առաջին անգամ այն հրատարակվել է ֆրանս. (1856), ապա տպագրվել նաև հայերեն բնագրով (1857) և ռուս. (1862):

*Երկ.* Պատմութիւն, ՍՊԲ, 1887:

*Գրկ.* Ա կ ի ն յ ա ն Ն., Ղևոնդ Երեց պատմագիր, տես Մատենագրական հետազոտություններ, հ. 3, Վնն., 1930:
*Ա. Տեր-Ղևոնդյան*

**ՂԵՎՈՆԴ ԵՐԵՑ**, Ղ և վ ո ն դ Վ ա ն ա ն դ ե ց ի (ծն. թ. անհտ.—454), եկեղեցական գործիչ, V դարի հայ ազատագրական պայքարի (*Վարդանանց պատերազմ*) մասնակից: Եղել է Մեսրոպ Մաշ-

տոցի և Սահակ Պարթևի աշակերտը: Մասնակցել է Շահապիվանի ժողովին (444): 450-ի ամռանը գլխավորել է Անգղի բնակչության հարձակումը պարսիկ մոգերի վրա, որոնք փորձել են տեղի եկեղեցին դարձնել ատրուշան: Մասնակցել է Ավարայրի ճակատամարտին (451), ելույթներով ոգևորել կռվողներին: Քրիստոնեության ջատագովմանը նվիրված Ղ-ի քարոզները, Պարսկաստանի նվաճողական քաղաքականության (որը զուգակցված էր հայերին հավատափոխ անելու հետ) պայմաններում, նպաստել են ազգային-ազատագրական պայքարին: Ավարայրի ճակատամարտից հետո գերվել է, աքսորվել Ապար (այժմ՝ Խորասան) աշխարհի Նյուշապուհ քաղաքը, ապա սպանվել:

Գրկ. Ղ ա զ ա ր Փ ա ր պ ե ց ի, Պատմութիւն Հայոց եւ Թուղթ առ Վահան Մամիկոնեան, Տփղիս, 1904: Ե ղ ի շ ե, Վարդանի և հայոց պատերազմի մասին, Ե., 1971:

*Ս. Մելիք-Բախշյան*

**ՂԵՎՈՆԴԻՈՍ ՀԱՅԿԱԶՆ**, Լ և վ ո ն Հ ա յ կ ա զ ն, Լ և ո ն տ ի ո ս (ծն. թ. անհտ.— մահ. թ. անհտ.), IV դարի հայ ճարտասան-փիլիսոփա, նորպլատոնական, քաղաքական-պետական գործիչ: Սովորել է Աթենքում՝ *Պարույր Հայկազնի*, *Լիբանիոսի* դպրոցներում: Վերադառնալով Հայաստան (Փոքր Հայք)՝ հիմնել է փիլ. դպրոց: Հուլիանոս կայսրը նրան նշանակել է Պաղեստինի և Գաղատիայի կառավարիչ: Ղ. Հ-ի կենսագրության և ուսմունքի վերաբերյալ տեղեկություններ չեն պահպանվել:

*Գ. Խրլոպյան*

**ՂԵՎՈՆԴՅԱՆ** Գևորգ Հարությունի (1895, Թիֆլիս —1959, Երևան), հայ սովետական բժիշկ: ՀՍՍՀ վաստ. բժիշկ: ՍՄԿԿ անդամ 1918-ից: 1923-ին ավարտել է Դոնի Ռոստովի համալսարանի բժշկ. ֆակուլտետը: Աշխատել է Ժելեզնովոդսկում, Կիսլովոդսկում: 1930-ին տեղափոխվել է Հայաստան, նշանակվել առողջապահության ժողկոմի տեղակալ, 1931—37-ին՝ առողջապահության ժողկոմ: 1941—43-ին ղեկավարել է Սոչի—Մացեստա կուրորտային վարչությունը, 1943—44-ին՝ Երևանի և Թբիլիսիի էվակուացիոն կետերը: 1943-ին նշանակվել է Երևանի բժշկ. ինստ-ի դիրեկտոր, 1944—49-ին՝ Հայաստանի առողջապահության մինիստր: 1951—59-ին եղել է Երևանի բժշկ. ինստ-ի ռեկտոր, միաժամանակ ղեկավարել երեխաների և դեռահասների հիգիենայի ամբիոնը: Ղ-ի աշխատանքները նվիրված են առողջապահության և դպրոցականների հիգիենայի հարցերին: Ղ. պարգևատրվել է Լենինի, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով: Ղ-ի անունով է կոչվում Երևանի № 5 հիվանդանոցը:

**ՂԶԸԼԳՅՈՒԼ** (մինչև 1946-ը՝ Այասափ), գյուղ Հայկական ՍՍՀ Եղեգնաձորի շրջանում, շրջկենտրոնից 20 *կմ* հյուսիս-արևելք: Միավորված է Ղավուշուղի անասնապահական սովետական տնտեսության հետ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, կինո, բուժկայան: Գյուղում և շրջակայքում պահպանվել են Արատեսի վանքի համալիրը (VII դ.), Աստվածածին (X—XI դդ.), Ս. Կարապետ (XI—XII դդ.) եկեղեցիները, 5 մատուռ-դամբարան (VII դ.), խաչքարեր (XIII դ.), գերեզմանոց (X—XVII դդ.):

Ղզըլգյուլ



**ՂԶԸԼԴԱՇ**, գյուղ Հայկական ՍՍՀ Կալինինոյի շրջանում, շրջկենտրոնից 14 *կմ* հյուսիս-արևելք: Անասնապահական-կարտոֆիլաբուծական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, բուժկայան:

**ՂԶԸԼՇԱՖԱԿ**, գյուղ Հայկական ՍՍՀ Կալինինոյի շրջանում, շրջկենտրոնից 15 *կմ* հյուսիս-արևմուտք: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև ճակնդեղի, կարտոֆիլի և կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կինո, կապի բաժանմունք, մանկապարտեզ, բուժկայան: Գյուղից արմ. պահպանվել են եկեղեցի և գերեզմանոց:

**ՂԶԸԼՇԱՖԱԿ** (մինչև 1940-ը՝ Շխլար), գյուղ Հայկական ՍՍՀ Սիսիանի շրջանում, շրջկենտրոնից 13 *կմ* հարավ-արևմուտք: Միավորված է Սոֆլուի անասնապահական սովետական տնտեսության հետ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կինո, հեռախոսակայան: Գյուղում և շրջակայքում պահպանվել են եկեղեցի, գյուղատեղի և գերեզմանոց:

**ՂԶԸԼՋԱ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Վանի վիլայեթի Արճակի գավառում, Վանա լճից արևմուտք: 1909-ին ուներ 55 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ, այգեգործությամբ և անասնապահությամբ: Ղ-ի հայերը 1915-ի հուլիսին, ռուս. զորքերի հետ գաղթել և բնակություն են հաստատել Արևելյան Հայաստանում:

**ՂԶԸԼՋՈՒՂ**, գյուղ Հայկական ՍՍՀ Սիսիանի շրջանում, շրջկենտրոնից 7 *կմ* հյուսիս-արևելք: Վարչատերիտորիալ կարգով ենթարկվում է Սիսիանի քաղաքային սովետին: Միավորված է Սիսիանի անասնապահական սովետական տնտեսության հետ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան:

**ՂԶԼԱՐ**, քաղաք Դաղստանի ԻՍՍՀ-ում, Թերեքի դելտայում: 30 հզ. բն. (1970): Երկաթուղային կայարան է: Կան էլեկտրամեխանիկական, կոնյակի, գինու, յուղապանրագործական, մրգի-բանջարեղենի պահածոների և խաղողի հյութի գործարաններ, ալրաղաց և այլ կոմբինատներ: Գործում են էլեկտրամեխանիկական տեխնիկում, բժշկ. ուսումնարան, հայրենագիտական թանգարան: Առաջին անգամ հիշատակվել է 1609-ին:

Պ ա տ մ ա կ ա ն տ ե ղ ե կ ա ն ք: 1735-ին կառուցվել է ամրոցը, որով և հիմք է դրվել քաղաքին, և սկսվել Կովկասյան ամրացված գծերի կառուցումը: 1785-ից՝ Թերեքի մարզի գավառային քաղաք: XVIII—XIX դդ. Մերձավոր և Միջին Արևելքի հետ Ռուսաստանի առևտրական կետ, XIX դ. սկզբից՝ խաղողագործության և գինեգործության խոշոր կենտրոն:

Հ ա յ ե ր ը Ղ-ում հաստատվել են քաղաքի հիմնադրումից անմիջապես հետո: 1736-ից Ղ-ի ամրոցում տեղավորվել են ռուս. բանակի հայկ. և վրաց. հեծելավաշտեր: Ռուս. կառավարության որոշմամբ կայազորի ծառայողների համար առանձնացվել են տնատեղ և վարելահողեր: Այսպես աստիճանաբար ձևավորվել է Ղ-ի հայկ. թաղամասը: Հայ բնակչությունը զբաղվել է հիմնականում գինեգործությամբ (նաև կոնյակի արտադրությամբ), շերամապահությամբ և առևտրով (Ղ-ում եղել է «Հայկական շուկա»): Հայ գաղութը մեծ դեր է խաղացել Ռուսաստանի և Անդրկովկասի ռազմ. և քաղ. առնչությունների մեջ: 1798-ին Ղ-ում հաշվվում էր 2779 հայ: 1799-ին Պավել I-ի հրովարտակով հայերին շնորհվել են նույնպիսի արտոնություններ, ինչպիսիք տրվում էին Ռուսաստան հրավիրված օտարերկրացիներին: XVIII դ. 2-րդ կեսին Ղ-ում հիմնվել է հայկ. դատարան՝ վարչական և իրավական գործերը վարելու, ինչպես նաև հարկերի և պարհակների գործը տնօրինելու համար: XIX դ. վերջին հայերի թիվը 6000 էր (քաղաքի բնակչության 2/3-ից ավելին): XIX դ. կեսին գործում էր հայկ. ծխական դպրոց, իսկ դարի վերջին՝ արական և իգական երկդասյան դպրոցներ: Ղ-ում գործել են կովկասահայ մշակութային և հասարակական ընկերությունների բաժանմունքներ: 1905-ին ղզլարցի երաժշտագետ, հետագայում անվանի կոմպոզիտոր Ռ. Մելիքյանը կազմակերպել է երգչախումբ: Հայերը մասնակցել են տեղի ս-դ. կազմակերպությունների գործունեությանը, քաղաքի աշխատավորների հեղափոխական ելույթներին: Այստեղ է ծնվել Ի. Լալայանցը: Ներկայումս (1981) Ղ-ում ապրում է շուրջ 4 հզ. հայ:

Գրկ. Գ և ո ր գ յ ա ն Գ. Գ., Ղզլար, Հայ ազգագրություն և բանահյուսություն, գիրք 10, Ե., 1980: В о л к о в а Н. Г., О расселении армян на Северном Кавказе до начала XX века, «ՊԲՀ», № 3, 1966. *Վ. Խաչատրյան*

**ՂԶԼՃՈՒՂ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Խարբերդի վիլայեթի Չարսանճագի գավառում: 1914-ին ուներ 20 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Կար եկեղեցի (Ս. Աստվածածին): Ղ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՂԶՂԱԼԱ**, Ա ղ ջ կ ա բ ե ր դ, Ա ղ վ ա ն ա բ ե ր դ, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտունու շրջանում, շրջկենտրոնից 12 *կմ* հյուսիս, Նախատակ լեռան ստորոտում: Կոլտնտեսությունն զբաղվում է խաղողագործությամբ, հացահատիկի մշակությամբ, անասնապահությամբ: Կ-ում գործում է խաղողի նախնական վերամշակման գործարան: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի պալատ, կինո, 2 գրադարան, բուժկայան, հնագիտական թանգարան: Ղ-ի տարածքում

գտնվում են եկեղեցիներ, գյուղատեղիներ, խաչքարեր (VII, IX, XIII, XVII դդ.)։ Գյուղից արլ. Հինգշենատեղ հնավայրից գտնըվել են բրուտագործի արհեստանոց, կավե խողովակների շարք, բրոնզից և պղնձից ձուլած բազմաթիվ իրեր, որոնք նման են Դվինում հայտնաբերված համանման իրերին։ 1972-ին Ղ-ում հայտնաբերվել է թրծված կավե պատերով ձուլարան։

**ՂԸԶՂԱԼԱ** (1978-ից՝ Գետավան), գյուղ Հայկական ՍՍՀ Կալինինոյի շրջանում, շրջկենտրոնից 10 *կմ* հարավ-արևելք։ Միավորված է Սարատովկայի կոլտնտեսության հետ։ Ունի տարրական դպրոց, գրադարան։

**ՂԼԻՋԲԱՂ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Ասկերանի շրջանում, շրջկենտրոնից 6 *կմ* հյուսիս։ Միավորված է Խանաբաղի կոլտնտեսության հետ։ Ունի տարրական դպրոց, ակումբ, գրադարան։ Ղ-ում կա եկեղեցի (Աստվածածին, XIX դ.)։

**ՂԼՏՃՅԱՆ** Արսեն (28.3.1868, Ալեքսանդրապոլ — 1943, Վաղարշապատ), հայ իրավագետ։ Ավարտել է Ներսիսյան դպրոցը (1894)։ 1907—13-ին արտասահմանում ստացել է բարձրագույն իրավաբանական կրթություն։ Եղել է վարդապետ, վարել եկեղեցական պաշտոններ։ Ղ-ի հին հայ իրավունքին (հայ եկեղեցական ժողովներ ու կանոնական որոշումներ, ամուսնաընտանեկան իրավունք ևն) նվիրված աշխատություններում արժեքավոր են բաժինքի (օժիտ), տնտեսայնության, գնմամբ ամուսնության, նշանադրության իրավահարաբերությունների վերաբերյալ հետազոտությունները։ Ղ. մշակել է հայ նախապետական ընտանիքի ճյուղագրությունը, փորձել է տալ հայ ընտանեկան իրավունքի համակարգը։ Արիական և սեմական իրավունքների միջև եղած տարբերությունը Ղ. բացատրել է ռասայական տարբերություններով, անտեսել իրավունքի զարգացման սոցիալ-տնտեսական պատճառները։ Նրա կարծիքով հայ իրավունքը զուտ արիական է, որը Մխիթար Գոշի և Սմբատ Սպարապետի դատաստանագրքերում ամբողջությամբ չի արտացոլվել, իբր, օտար աղբյուրներից կատարված փոխառումների հետևանքով։ Այդ առումով Ղ. դատաստանագրքերը հայ իրավունքի լիարժեք աղբյուրներ չի համարել։

*Երկ.* Նյութեր Դավիթ Բեկի պատմության վերաբերյալ, «Արարատ», 1905, էջ 382։ Ընտրական սկզբունքը հայ եկեղեցու պատմական կյանքում, «Մուրճ», 1905, № 8—9։ Կանոնագիրք հայոց, Թ., 1914։ Ասորական դատաստանագիրք, Էջմիածին, 1917։ Սմբատ իշխանի (Գունդստաբլի) Կիլիկյան դատաստանագիրքը, Էջմիածին, 1918։

*Գրկ.* Սամուելյան Խ., Հին հայ իրավունքի պատմությունը, հ. 1, Ե., 1939։ Հովհաննիսյան Ս. Հ., Ամուսնա-ընտանեկան իրավունքը վաղ ավատական Հայաստանում (IV—IX դդ.), Ե., 1976։ *Ա. Սուքիասյան*

**ՂԵԼԱՂ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Ասկերանի շրջանում, շրջկենտրոնից 11 *կմ* հյուսիս։ Միավորված է Նորագյուղի կոլտնտեսության հետ։ Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան։ Ղ-ում պահպանվել է Ս. Աստվածածին եկեղեցին (XIX դ.)։

**ՂՈՂԱՆՋ**, տես *Զարկումներ*։

**ՂՈՆՋԱԼԻ**, գյուղ Հայկական ՍՍՀ Ամասիայի շրջանում, շրջկենտրոնից 18 *կմ* հյուսիս-արևմուտք։ Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև կերային կուլտուրաների մշակությամբ։ Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, կապի բաժանմունք, բուժկայան։

**ՂՈՇԱԲՈՒԼԱՂ**, գյուղ Հայկական ՍՍՀ Վարդենիսի շրջանում, շրջկենտրոնից 6 *կմ* հարավ-արևելք։ Կոլտնտեսությունն



Ղոշաբուլաղ

զբաղվում է հացահատիկի, կերային կուլտուրաների, ծխախոտի մշակությամբ և անասնապահությամբ։ Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կինո, մանկապարտեզ, բուժկայան։

**ՂՈՇԱՎԱՆՔ**, տես *Հոռոմոսի վանք*։

**ՂՈՎՇՈՒՏ**, գյուղ Հայկական ՍՍՀ Ղափանի շրջանում, Գեղի գետի ափին, շրջկենտրոնից 17 *կմ* հարավ-արևմուտք։ Միավորված է Լեռնաձորի անասնապահական սովետական տնտեսության հետ։ Ունի ակումբ, գրադարան։

**ՂՈՐՂԱՆՅԱՆ** (Կորգանով) Գենարիոս Հովսեփի [30.4(12.5).1858, Ղվարելի Կախեթիա (այժմ՝ Վրացական ՍՍՀ-ում)—23.2(7.3).1890, Դոնի Ռոստով], հայ կոմպոզիտոր, դաշնակահար, մանկավարժ։ *Ղորղանյանների* տոհմից։ Թիֆլիսում աշակերտել է Է. Էպշտեյնին։ 1874—1876-ին սովորել է Լայպցիգի (դաշնամուր, դասատու՝ Է. Ռայնեկե), 1877—78-ին՝ Պետերբուրգի (դաշնամուր, դասատու՝ Լ. Բրասեն) կոնսերվատորիաներում։ 1879-ից ապրել և ստեղծագործել է Թիֆլիսում։ 1889-ին Պ. Ի. Չայկովսկու խորհրդով կոմպոզիցիայի դասեր է առել Ս. Տանեևից։ Գրել է ռոմանսներ Պուշկինի, Ա. Տոլստոյի, Մայկովի, Ֆետի բանաստեղծությունների տեքստերով, դաշնամուրային երկեր, որոնց մի մասում («Բայաթի», «Նոր բայաթի», «Հայկական ռապսոդիա», «Կովկասյան ռապսոդիա») օգտագործել է հայկ. ժող. երգեր ու պարեղանակներ։ Կատարել է աշուղական («Պաղ աղբյուրի մոտ»), ժող. («Սիրունիս») երգերի մշակումներ։ Լինելով հայ կոմպոզիտորական դպրոցի առաջին ներկայացուցիչներից՝ Ղ. նպաստել է հայկ. պրոֆեսիոնալ երաժշտական ձևերի զարգացմանը։ Ղ-ի դաշնամուրային էտյուդները տեղ են գտել Լայպցիգի կոնսերվատորիայի ուսումնական երկացանկում։ *Մ. Հարությունյան*

**ՂՈՐՂԱՆՅԱՆ** (Տերյան-Կորգանովա) Հեղինե Հովսեփի (1864— մահ. թ. անհտ.), հայ երգչուհի (կոլորատուրային, այնուհետև դրամատիկական սոպրանո), մանկավարժ։ Կոմպոզիտոր Գ. *Ղորղանյանի* քույրը։ Երգեցողություն է սովորել Փարիզում (դասատու՝ Պ. Վիարդո-Գարսիա), երգել Եվրոպայի մի շարք քաղաքների թատրոններում։ 1884-ին տեղափոխվել է Թիֆլիս, ելույթներ ունեցել տեղի և Մոսկվայի օպերային թատրոններում։ 1899-ից Խարկովի օպերային թատրոնի մեներգչուհի։ Դերերգերից են՝ Ռոզինա (Ռոսինիի «Սևիլյան սափրիչ»), Աիդա (Վերդիի «Աիդա»), Կարմեն (Բիզեի «Կարմեն»), Հուդիթ (Սերովի «Հուդիթ»), Վալենտինա (Մեյերբերի «Հուգենոտներ»), Լիզա (Չայկովսկու «Եվգենի Օնեգին»)։ Հանդես է եկել նաև որպես կամերային երգչուհի։ 1904-ին թողել է բեմը, անցել մանկավարժական աշխատանքի (աշակերտներից են Ք. Դերժինսկայան, Ե. Կատուլսկայան)։ *Մ. Հարությունյան*

**ՂՈՐՂԱՆՅԱՆ** (Սվետադե) Մարիամ Հովսեփի (ծն. և մահ. թթ. անհտ.), XIX դարի վերջի —XX դարի սկզբի հայ երգչուհի (մեցցո-սոպրանո), մանկավարժ։ Կոմպոզիտոր Գ. *Ղորղանյանի* քույրը։ Երաժշտական կրթությունը ստացել է Փարիզում։ Եղել է Եվրոպայի և ԱՄՆ-ի մի շարք օպերային թատրոնների մեներգչուհի։ 1905-ին Թիֆլիսում բացել է երգեցողության դասընթացներ։

**ՂՈՐՂԱՆՅԱՆ** (Դարիալի) Նինա Հովսեփի (1852—1896), հայ երգչուհի (մեցցո-սոպրանո), մանկավարժ։ Կոմպոզիտոր Գ. *Ղորղանյանի* քույրը։ Սովորել է Պետերբուրգում, Բեստուժևյան դասընթացներում։ Մասնագիտական երաժշտական կրթությունն ստացել է Միլանում (դասատուներ՝ Լամպերտի, Բուցի)։ Երգել է Եվրոպայի օպերային և համերգային բազմաթիվ բեմերում։ Սկսած 1880-ական թթ. ելույթներ է ունեցել Թիֆլիսում։ 1888-ին տեղափոխվել է Օդեսա, զբաղվել մանկավարժական գործունեությամբ, 1891-ին երաժշտության դասընթացներ է հիմնել Մոսկվայում (երգչուհի Կլիմենտովա-Մուրոմցևայի հետ)։ *Մ. Հարությունյան*

**ՂՈՐՂԱՆՅԱՆ** Ստեփան Ալեքսանդրի (1865—1925), հայ հասարակական գործիչ, *Ղորղանյանների* տոհմից։ 1885—1888-ին եղել է Սուրմալուի, 1888—95-ին՝ Նախիջևանի գավառապետի օգնական, 1895—1910-ին՝ Նոր Բայազետի, 1910—1915-ին՝ Քութայիսի գավառապետ, 1919—1920-ին՝ Կարսի նահանգապետ։ 1886-ից «Մշակ» օրաթերթում հրապարակած «Գավառական նամակներ» և «Նյութեր հասարակական կյանքի ուսումնասիրության» (1896-ից) հոդվածաշարում լիբերալ նարոդնիկության դիրքերից վերլուծել է Հայաստանի տնտ. կացությունը (հատկապես 1870-ի գյուղացիական ռեֆորմը և դրա հետևանքները), մերկացրել ցարական պաշտոնեության զեղծարարությունները, կաշառակերությունը, պաշտպանել մանր արտադրողի շահերը։ Դատապարտել է դաշնակցական կառավարության հակաժողովրդական քաղաքականությունը։ Անդրկովկասում սովետական կարգերի հաստատումից հետո անցել է կենսաթոշակի։

*Գրկ.* Եղիազարյան Ա. Մ., Հայ լեգալ նարոդնիկ Ստեփան Ղորղանյան, «Տեղեկագիր ՀՍՍՀ ԳԱ», 1959, № 8։

**ՂՈՐՂԱՆՅԱՆ** (Կորգանով) Վասիլ (Բարսեղ) Դավթի [22.1(3.2).1865, Թիֆլիս—6.6.1934, Երևան], հայ երաժըշտագետ: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1934): Աշակերտել է Է. Էպշտեյնին (դաշնամուր), Կ. Ալիխանովին և Գ. Ղորղանյանին (տեսություն): 1880-ական թթ. վերջերին ավարտել է Պետերբուրգի ռազմաինժեներական ուսումնարանը, աշխատել Սարիղամիշում, 1888-ից ապրել Թիֆլիսում: Ծավալել է հասարակական, հրապարակախոսական գործունեություն, հանդես եկել տեղական մամուլում, եղել Մոսկվայի և Պետերբուրգի մամուլի խոշոր երաժշտական հանդեսների թղթակիցը:



Վ. Դ. Ղորղանյան

Առաջինն է նկատել երիտասարդ Ֆ. Շալյապինի մեծ տաղանդը: 1890-ական թթ. եղել է Գերմանիայում, Ավստրիայում, Ֆրանսիայում, Իտալիայում, հանդիպել Յո. Բրամսին, Ժ. Մասնեին, Կ. Սեն-Սանսին, Ջ. Վերդիին: 1896-ին թողել է զինվորական ծառայությունը: 1891—1901-ին Ղ. Ռուսական երաժշտական ընկերության Թիֆլիսի բաժանմունքի վարչության անդամ էր: 1900-ին հիմնել է Անդրկովկասում առաջին ռուս. «Կավկազսկի վեստնիկ» («Кавказский вестник») գիտագրական ամսագիրը (հրատարակել և խմբագրել է մինչև 1902-ը): 1900—04-ին Միջազգային երաժշտական ընկերության կովկասյան բաժանմունքի տնօրենն էր: 1904-ին Կովկասի երաժշտության մասին ելույթներ է ունեցել Միջազգային երաժշտական ընկերության Բեռլինյան սեկցիայի նիստերին, 1909-ին՝ Վիեննայի կոնգրեսում: Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո Ղ. հիմնականում գործել է Երևանում՝ 1925—30-ին եղել է հանրային գրադարանի դիրեկտորի տեղակալ, Պետհրատի երաժշտական սեկտորի նախագահ, կոնսերվատորիայի պրոֆեսոր-կոնսուլտանտ: Արևմտաեվրոպական և ռուս. երաժշտության խոշորագույն ներկայացուցիչներին նվիրված աշխատությունների, հոդվածների հեղինակ է: Տասնյակ տարիներ հավաքել, ուսումնասիրել և համակարգել է Բեթհովենի կյանքին վերաբերող փաստական հարուստ նյութեր, դեռևս 1888-ին Թիֆլիսում կոմպոզիտորի մասին հրատարակել գըրքույկ, նրա նամականին (1300 նամակ, երկու գրքով՝ 1900 և 1904), մեծածավալ մենագրություն («Կենսագրական էտյուդ», 1909) և ճանաչվել որպես խոշորագույն բեթհովենագետ: Գրել է Մոցարտի մասին ծավալուն աշխատություն (1900), ակնարկ՝ նվիրված Վերդիին (1897), առաջինն է լուսաբանել «Պուշկինը երաժշտության մեջ» թեման: Ուսումնասիրել է հայկ. և վրաց. երաժշտությունը, հավաքած նյութերը ընդհանրացրել «Կովկասյան երաժշտություն» ժողովածուում (1901), ուր հեղինակի թարգմանությամբ տեղ են գըտել նաև Կոմիտասի «Հայկական եկեղեցական երաժշտություն» և «Հայ գեղջուկ պարերգեր» աշխատությունները: Ղ-ի բազմակողմանի գործունեությունը նպաստել է մինչսովետական և սովետական երաժըշտական մշակույթի զարգացմանը:

*Երկ.* Статьи, воспоминания, путевые заметки, Е., 1968, с. 3—29 (Библиография).

*Գրկ.* Թ ա ղ և ո ս յ ա ն Ա. Գ., Էջեր հայռուսական երաժշտական կապերի պատմությունից, Ե., 1977, էջ 202—215:

*Մ. Հարությունյան*

**ՂՈՐՂԱՆՅԱՆՆԵՐ**, հայ ազնվական տոհմ: XVIII դ. վրաց պատմագիր Վախուշտիի հավաստմամբ Ղ-ի նախնին՝ Ղորղանը, իր գերդաստանով Հայաստանից (Սուրմալուի Ղորղան ամրոցից) 1415-ին գաղթել է Վրաստան: Ազնվականի իրավունքներով նա կալվածքներ է ստացել Բորչալուի գավառում, ապա՝ Թիֆլիսի մոտակայքում (Մեծ և Փոքր Ենագեթի գյուղերը): Վրաստանում Ղ. վարել են պալատական և զինվորական պաշտոններ: Վրաստանը Ռուսաստանին միանալուց (1801) հետո Ղ. պահպանել են իրենց ազնվականական իրավունքները: Տոհմը տվել է նշանավոր մի շարք գործիչներ (գեն. Հովսեփ Ղորղանյան, Գենարիոս Ղորղանյան, Ստեփան Ղորղանյան և ուրիշներ): Ղ-ի տոհմից էր նաև Բաքվի կոմունայի զինվորական կոմիսար Գրիգոր *Կորգանովը*:

**ՂՊՏԻԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, *ղպտիների* գրականությունը, որը գոյություն է ունեցել IV—XVIII դարերում: Առաջացել է Եգիպտոսում քրիստոնեության տարածման հետ և հիմնականում զարգացել վանքերում: Ղպտիական առաջին գրավոր հուշարձանները եղել են Հին ու Նոր կտակարանների, քրիստոնեական աստվածաբանների երկերի և այլ գործերի թարգմանությունները հունարենից: Ամենամեծ գրողն է համարվում պատմական գործիչ Շենուտեն (մահ. 451): Ղպտիերենով ըստեղծվել է վարքագրական հարուստ գրականություն, որը ազդեցություն է գործել միջնադարյան Եվրոպայի գրականության վրա: Լայն ճանաչում են ունեցել ճգնավորների մասին առասպելները: I հազարամյակի վերջին զարգացել է պոեզիան, գըրվել են հեքիաթի և խրատական բնույթի ստեղծագործություններ: Արաբերենի կողմից *ղպտիերենը* դուրս մղվելուց հետո էլ ստեղծվել են գործեր արդեն մեռած, գըրքային ղպտիերենով («Տրիադոն», պոեմ, XIV դ.): Մինչև XVIII դ. ղպտիերենով դեռևս գրվել են եկեղեցական հիմներ:

**ՂՊՏԻԵՐԵՆ**, *եգիպտերենի* վերջին փուլը, որն ընդգրկում է զարգացման մոտ մեկ հազարամյակ: XI—XII դդ. Ղ. արդեն մեռած լեզու էր՝ դուրս մղված արաբերենի կողմից: Պահպանվել է քրիստոնյա եգիպտացիների մոտ՝ որպես պաշտամունքային լեզու: Ունի 5 հիմնական բարբառ. սայիդյան (IV—XI դդ., գրական լեզու), բոհայրյան (որն այժմ գործածում են *ղպտիները*), սուբախմիմյան, ախմիմյան, ֆայումյան: Ղ-ին հատուկ է զարգացած վերլուծական կառուցվածքը: Հնչյունական համակարգում առկա է 23 բաղաձայն (խուլեր, ձայնորդներ, մեկ ձայնեղ՝ j) և 7 հիմնական ձայնավոր: Շեշտը ուժային է: Բառապաշարում կան հուն. փոխառություններ: Այբուբենը տառագիր է. ստեղծել են եգիպտացիները մ. թ. II—III դդ.՝ Աստվածաշունչը հունարենից Ղ-ի թարգմանելիս:

**ՂՊՏԻՆԵՐ**, քրիստոնյա եգիպտացիներ, հին եգիպտացիների հետնորդները: «Ղպտի» անվանումն առաջացել է Եգիպտոս տեղանվան աղավաղումից: Ղ. բնակվում են Եգիպտոսի Արաբական Հանրապետությունում, հիմնականում քաղաքներում՝ Ասյութ, Ախմիմ, Կահիրե ևն: Ոչ մեծ համայնքներ կան նաև Սուդանում, Իսրայելում, Հորդանանում, Իրաքում, Քուվեյթում, Թուրքիայում: Ղ-ի թիվը ավելի քան 2 մլն է: Հիմնականում ծառայողներ են, առևտրականներ, արհեստավորներ:

II—III դդ., Եգիպտոսում քրիստոնեության տարածման ընթացքում, ստեղծվեց ղպտիական գիրը, *ղպտիերենով* ծաղկում ապրեց մատենագրությունը (մինչև VII դ.): VII դ. Եգիպտոս ներխուժեցին արաբները: Ղ. բազմիցս ապստամբեցին իրենց հայրենիքը նվաճած ու ստրկացրած արաբների դեմ (ամենախոշորը և վերջինը 831-ին էր), սակայն Ղ-ի նկատմամբ եկվոր արաբների ազգային, կրոնական (բռնի մահմեդականացում), տնտ. ճնշման հետևանքով Ղ-ի թիվը նվազեց՝ կազմելով բնակչության փոքրամասնությունը (հոգևոր համայնքի ձևով), անկում ապրեց Ղ-ի մշակույթը: XII դ. ղպտիերենը դադարեց խոսակցական լեզու լինելուց (մնաց իբրև գրավոր հաղորդակցման և եկեղեցական ծեսերի լեզու), Ղ. դարձան արաբախոս: Ղ-ի գերակշիռ մասը դավանում է միաբնակություն (տես *Միաբնակներ*): Ղպտիական եկեղեցու (ձևավորվել է V դ.) գլուխ կանգնած է պատրիարքը (նստավայրն է Կահիրեն):

Հայ-ղպտիական հարաբերություններն ունեցել են մշակութային, կրոնական բընույթ, որոնք, սկզբնավորվելով վաղ միջնադարում, շարունակվում են ցայսօր: VII դ. Երուսաղեմի սրբավայրերի զգալի մասը գտնվել է հայերի, Ղ-ի, ասորիների և եթովպացիների տնօրինության տակ: Այժմ Երուսաղեմում Ղ. ծիսակատարություններն անում են հայկ. եկեղեցիներում: Ղպտի մատենագիրները ծանոթ են եղել հայ մատենագրությանը, մասնավորապես՝ Ագաթանգեղոսի «Պատմություն Հայոց»-ին, որից պահպանված արաբ. համառոտ խմբագրությունը թարգմանվել է ղպտիերենից: IV—VII դդ., մինչև արաբ. նվաճումները Ղ. ստեղծել են Հին Եգիպտոսի և անտիկ աշխարհի մշակութային ժառանգությանը աղերսվող ինքնատիպ արվեստ: Ալեքսանդրիայից դեպի հվ., Նեղոսի հովտում, պահպանվել են Բաուիտի վանքը (IV դ.), Սպիտակ վանքի մեծ բազիլիկը (440), Կարմիր վանքը (V դ.), Բագաուատի մի քանի հարյուրի հասնող դամբարանները, որոնք ունեն գմբեթավոր աղոթարաններ (IV—VI դդ.), ինչպես և 2—4-հարկանի բնակելի տներ: Ճարտ.




Նեղոսի աստծու պատկերով մեդալիոն, գեղարվեստական գործվածք (IV դ., Պուշկինի անվան կերպարվեստի թանգարան, Մոսկվա)

այդ կոթողներում առկա են բիբլիական և ավետարանական թեմաներով վաղ շրջանի որմնանկարներ, որոնց բնորոշ է գունա-գրաֆիկական պարզ ընկալումը: Ճարտ. հարդարանքում կիրառվել է նաև գրաֆիկական լուծում ու շեշտված նյութականություն ունեցող հարթաքանդակը (օրինակ, «Հոր աստվածը նիզակահարում է կոկորդիլոսին», քար, IV դ., Լուվր, Փարիզ), որտեղ պարզորոշ դրսևորվել է հին եգիպտական ու քրիստոնեական քանդակագործության զուգորդման ձգտումը: Զարգացած է փայտի և ոսկրի փորագրությունը: Համաշխարհային համբավ են վայելում ղպտիական գեղարվեստական գործվածքները, որոնց վրա մեծ մասամբ պատկերված են հուն. և եգիպտական դիցաբանական (IV դ.), ավելի ուշ (VI դարից)՝ քրիստոնեական կերպարներ: Դրանք ստեղծված են հեռանկարի ու լուսաստվերի օրենքների հմուտ կիրառմամբ, եզրիզված են ծաղկանկար կլոր շրջանակով: Ղ-ի արվեստը նոր ծաղկում է ապրել XVII դ.: Ղ-ի եկեղեցիներում պահպանվել են բազմաթիվ սրբապատկերներ, որոնց զգալի մասի հեղինակը *Հովհաննես* է (Հաննա էլ Արմանի) ու նրա համագործակիցները՝ որդին՝ Հովսեփը (Կերգեսը), Իբրահիմ էլ Նասիխը, Հաջի Դեֆին Մերկերիոսը: Սրանց ստեղծագործություններում զուգորդվել են բյուզանդական ու արաբ. գեղագիտական սկզբունքները: Ղ-ի արվեստի բազմաթիվ նմուշներ պահպանվում են Եգիպտոսի ղպտիական եկեղեցիներում և Ղպտիական արվեստի թանգարանում: Ղպտիական գործվածքների հարուստ հավաքածու ունեն Մոսկվայի Ա. Ս. Պուշկինի անվ. կերպարվեստի՛ թանգարանն ու Լենինգրադի Էրմիտաժը:

*Գրկ.* Матье М., Ляпунова К., Художественные ткани Коптского Египта, М.—Л., 1951.

*Ա. Տեր-Ղևոնդյան, Մ. Ղազարյան*

**ՂՐԻՄ**, Ղրիմի թերակղզի, թերակղզի ՍՍՀՄ եվրոպական մասի հարավում: Տարածությունը 25,5 հզ. *կմ*² է: Արմ-ում և հվ-ում ողողվում է Սև, արլ-ում՝ Ազովի ծովերով: Արևելաեվրոպական հարթավայրին է միանում Պերեկոպի նեղ (մինչև 8 *կմ*) պարանոցով: Ղ-ի արլ-ում գտնվում են Կերչ, արմ-ում՝ Թարխանկուտ թերակղզիները, հս-արլ. ամբողջ ծովեզերքի երկայնքով ձգվում է Սիվաշը: Թերակղզու հս. մասը հարթավայր է (Տափաստանային Ղրիմ), հվ-ինը Ղրիմի լեռներն են (Ռոման Կոշ լ., 1545 *մ*): Գլխավոր լեռնաշղթայի ստորոտի երկայնքով ձգվում է ափամերձ շերտը (տես *Ղրիմի հարավային ափ*), որտեղ ծովեզերքին տեղ-տեղ հանդիպում են մագմատիկ ապարների ելքեր՝ լակոլիթներ (Այուդաղ լ.) և հրաբխային հնագույն զանգվածներ (Կարադաղ լ.): Օգտակար հանածոներից կան երկաթի հանքաքար, աղեր ու բուժիչ ցեխեր, կրաքարեր, կավեր, մերգելներ: Ղ-ի հս. մասի կլիման չափավոր տաք է, հունվարի միջին ջերմաստիճանը 1—2°C է, հուլիսինը՝ 24°C: Ղ-ի հվ. ափի կլիման միջերկրածովյան է, հուլիսի միջին ջերմաստիճանը 24°C է, հունվարինը՝ 4°C: Տարեկան տեղումները լեռների արմ-ում 1000—1200 *մմ* են, թերակղզու արլ-ում՝ 500—700 *մմ*, հս-ում՝ 300—500 *մմ*: Ղ-ի գետերը (Սև, Բելբեկ, Ալմա, Սալգիր) սակավաջուր են. Սալգիրի վրա կառուցվել է Սիմֆերոպոլի ջրամբարը: Կան աղի լճեր: Ղ-ի հս. մասը գրեթե ամբողջապես հերկված է. տեղ-տեղ պահպանվել է տափաստանային բուսականությունը: Լեռնալանջերը անտառապատ են (կաղնի, հաճարենի, սոճի): Ղ-ի հվ. ափի բուսականությունը միջերկրածովյան տիպի է: Կան զբոսայգիներ, պտղատու և խաղողի այգիներ, ծխախոտի պլանտացիաներ: Տես նաև *Ղրիմի մարզ*:

Պատմական տեղեկանք: Ղ-ի տարածքում հայտնաբերվել են հին քարի դարի մարդկային կացարաններ: Մ. թ. ա. I հազարամյակում այստեղ ապրել են կիմերները, տավրերը [այստեղից էլ՝ Ղ-ի լեռնային և ծովափնյա հատվածի հնագույն Տավրիկե (հուն. Ταυρικῆ) անունը] և սկյութները: Մ. թ. ա. VI—V դդ. հիմնադրվել են հին հուն. գաղութները՝ Թեոդոսիան, Պանտիկապեոնը, Խերսոնեսը ևն: Մ. թ. ա. V դ. Կերչի թերակղզում կազմավորվել է Բոսպորի, մ. թ. ա. III դ. տափաստանային մասում՝ Սկյութների պետությունը: Մ. թ. ա. I դ.—մ. թ. III դ. ծովափի մի հատվածին տիրել են հռոմեացիները: Մ. թ. սկզբին Ղ. ներթափանցեցին ալանները, III—IV դդ.՝ գոթերը և հոները, IV—V դդ.՝ բյուզանդացիները: I հազարամյակի 2-րդ կեսից կազմավորվել են ֆեոդալական հարաբերություններ: Թերակղզու հվ-արմ. հատվածում առաջացել են նոր պետություններ, որոնցից առավել մեծը Թեոդորո իշխանությունն էր (XIII—XV դդ.): Ղ-ի արլ. մասը X դ. մտնում էր *Տմուտարականի իշխանության* մեջ: Այս ժամանակաշրջանում Ղ-ի ազգաբնակչությունը կազմված էր սկյութների, տավրերի, գոթերի, սարմատների, ալանների, խազարների, պեչենեգների ևն հետնորդներից, իսկ ծովափում՝ նաև սլավոններից ու հույներից, XI դարից՝ նաև հայերից: XIII դ. Ղ. ներխուժեցին մոնղոլ-թաթարները, ստեղծեցին *Ոսկե հորդայի* Ղ-ի ուլուսը: XIII—XV դդ. Ղ-ում կային ջենովացիների առևտրական կենտրոններ: 1443-ին կազմավորվեց *Ղրիմի խանությունը*, որը 1475-ին դարձավ Թուրքիայի վասալը: 1768—74-ի ռուս-թուրքական պատերազմի ժամանակ Ղ. գրավեցին ռուսները, որոնք 1774-ին անկախ հայտարարված խանության տարածքը միացրեցին (1783) Ռուսաստանին: XIX դ. 60-ական թթ. ռեֆորմները նպաստեցին կապիտալիստական հարաբերությունների զարգացմանը հատկապես գյուղատնտեսության մեջ: XX դ. սկզբին Ղ-ում առաջացան ս-դ. կազմակերպություններ: 1905—07-ի հեղափոխության տարիներին ապստամբություններ բռնկվեցին Սևծովյան նավատորմում, երկաթուղային բանվորները մասնակցեցին 1905-ի համառուսաստանյան քաղ. գործադուլին: 1917-ի Փետրվարյան հեղափոխությունից հետո Ղ-ում ուժեղացան թաթար մանրբուրժուական կուսակցությունները, որոնք «Ղրիմը ղրիմցիներին» լոզունգով աշխատեցին երկրամասը կտրել հեղափոխական Ռուսաստանից: Դեկտ. 16(29)-ին Սևաստոպոլում իշխանությունն անցավ ռազմահեղափոխական կոմիտեին: Սովետական իշխանությունը ամբողջ Ղ-ում հաղթանակեց 1918-ի հունվարին: Մարտի 21-ին ստեղծվեց ՌՍՖՍՀ-ի կազմում Տավրիկյան ՍՍՀ, որի տարածքը ապրիլի կեսին գրավեցին գերմանացիները: Նոյեմբերին ափ դուրս եկան Անտանտի զորքերը: 1919—20-ին Ղ. գրավեցին Դենիկինի և Վրանգելի սպիտակգվարդիական զորքերը, 1920-ի նոյեմբերին Ղ. ազատագրվեց: 1921-ի հոկտ. 18-ին ստեղծվեց *Ղրիմի ԻՍՍՀ*: Սոցիալիստական շինարարության տարիներին ձեռք բերվեցին զգալի հաջողություններ: Հայրենական մեծ պատերազմի ժամանակ (1941—45) Ղ. դարձավ գերմանա-ֆաշիստական զորքերի դեմ պայքարի ռազմաբեմ: 1941-ի հոկտեմբեր —1942-ի հուլիսին շարունակվեց Սևաստոպոլի հերոսական պաշտպանությունը: Արյունալի մարտերով ուղեկցվեց 1941—42-ի Կերչ—Թեոդոսիայի դեսանտային օպերացիան: 1944-ի մայիսին սովետական բանակը ազատագրեց Ղ. (տես *Ղրիմի օպերացիա 1944*): Սովետական Միության հերոսի կոչման արժանացան 126 մարդ, ավելի քան 3000 պարտիզաններ և ընդհատակայիններ պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով: Ղ-ի ավերված տնտեսությունը արագորեն վերականգնվեց: 1945-ի ՌՍՖՍՀ-ի Գերագույն սովետի Նախագահության հրամանագրով Ղրիմի ԻՍՍՀ-ն վերակազմավորվեց Ղրիմի մարզի, որը 1954-ին՝ Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակի առթիվ անցավ ՈւՍՍՀ-ին:

Հայերը Ղրիմում: Ղ-ի հետ հայերի առաջին կապերը վերաբերում են Տիգրան Բ Մեծի և Միհրդատ Եվպատորի ժամանակներին: Ղ-ի մասին առաջին տեղեկություններից մեկը հաղորդում է «Աշխարհացոյց»-ը (VII դ.): VIII դ. սկզբին Խերսոնեսում էր հաստատվել իշխան Վարդանը, որը տեղի ապստամբների օգնությամբ 711-ին տապալեց Հուստինիանոս II-ին և հռչակվեց Բյուզանդիայի կայսր:

X դ. Խերսոնեսի իշխանավորներից էր հայազգի Կալոկիրը, որի օգնությամբ Բյուզանդիան փորձ էր անում դիվանագիտական կապերի մեջ մտնել Կիևի իշխան Սվյատոսլավի հետ: Բյուզանդիայի քաղ. ու կրոնական ճնշման և սելջուկյան արշավանքների հետևանքով, ինչպես նաև առևտրա-տնտեսական շարժառիթներով XI—XII դդ. Ղ-ում սկսում է հաստատվել հայ մշտական բնակչություն: Մոնղ. նվաճումների շրջանում Ոսկե հորդա տեղափոխված մեծ թվով հայեր, կոտրելով թաթարների դիմադրությունը, XIV դ. 30-ական թթ. վերջնական հանգրվան են գտնում Ղ-ում: Հայերի թիվը ստվարանում է XVI—XVII դդ., հատկապես ջալալիների շարժման ժամանակ ծայր առած արտագաղթի պատճառով: Միջին դարերում հայերը տեղաբաշխված էին թերակղզու Կաֆա (տես *Թեոդոսիա*), *Սուդակ* (Սուրոժ), *Սուրխաթ* (Հին Ղրիմ, Էսկի Ղրիմ, այժմ՝ Ստարի), Կեռզլև (տես *Եվպատորիա*), Կազարաթ, Ղարասուբազար (Ղարասու, այժմ՝ Բելոգորսկ), Ակմեչիթ (տես *Սիմֆերոպոլ*), Բախչիսարայ, Չեմբալո (այժմ՝ Բալակլավա), Օրաբազար (Արմյանսկի բազար, տես *Արմյանսկ*), Ինկերման քաղաքներում, ինչպես նաև զուտ հայկ. Խայալ, Բախչելի, Հորդալանկ, Թոփտի, Խամշլի, Ղշլավ, Շահինշահ, Նախիջևան ևն գյուղերում: XIV—XVIII դդ. հայերը թվով գրավում էին երկրորդ տեղը թաթարներից հետո: XV դ. կեսին միայն Կաֆայում ապրում էր շուրջ 50 հզ. հայ: Հայերի թվաշատության հետևանքով Ղ-ում ստեղծվել է հայկ. երկու առաջնորդություն, որոնցից մեկը ընդգրկում էր Կաֆայից մինչև Չերքեզիա, մյուսը՝ Բախչիսարայից մինչև Կաուշան սփռված հայկ. համայնքները: Գտնվելով հանդերձ թուրք-թաթարական և ջենովական գերիշխանության տակ՝ ղրիմահայերն օգտվում էին ներքին ինքնավարությունից, ունեին իրենց զինված ուժերը: XIII—XIV դդ. հայերի հիմնական զբաղմունքը առևտուրն էր: Հետագա դարերում այն գնալով ծավալվեց, սակայն լայն զարգացում ստացան նաև արհեստներն ու գյուղատնտ. զբաղմունքները: Հենվելով հզորացած առևտրա-վաշխառուական կապիտալի վրա՝ հայ ունևոր դասը XIV—XV դդ. Ղ-ում գրավում էր առաջատար տնտ. դիրք: XIII դարից սկսած մինչև 1475-ը Ղ-ի ինչպես ներքին, այնպես էլ Արևելքի և Արևմուտքի միջև տարանցիկ առևտրում առաջատար տեղը պատկանում էր հայ և ջենովացի, իսկ XIV—XVIII դդ.՝ հայ և ռուս վաճառականներին: Հայերի առևտրական գործունեությունը XIII—XVIII դդ. կենտրոնացած էր Կաֆա, Սուդակ, Սուրխաթ, Ղարասուբազար և Արմյանսկի բազար վաճառաշահ քաղաքներում: Ղրիմահայերը առևտրական գործուն կապեր էին հաստատել Եվրոպայի և Ասիայի բազմաթիվ երկրների հետ (Լեհաստան, Գերմանիա, Վենետիկի և Ջենովայի հանրապետություններ, Ռուսաստան, Ռումինիա, Թուրքիա, Պարսկաստան, մոնղ. տիրույթներ): Հայ առևտրական առավել ունևոր դասից առաջացել էին վաճառական-բանկիրներ, որոնք վարկավորում էին առևտրական մեծ գործարքները: XV դ. Կաֆայում կային 10 հայ խոշոր բանկիրներ: Ղրիմահայերի շրջանում նշանակալից տեղ ունեին արհեստները: Կիսաքոչվոր թաթարները մեծ մասամբ անասնապահներ էին, հետևաբար արհեստները հիմնականում հայ և հույն համայնքների մենաշնորհն էին: Հայ արհեստավորների մի մասը միավորված էր համքարություններում, որոնց անդամները հաճախ հանդես էին գալիս նաև որպես առևտրականներ: Համքարությունների կազմը միատարր չէր, առկա էր դասային շերտավորում: Հայ արհեստավորների գործունեությունը հատկապես աշխույժ էր Կաֆա, Սուրխաթ և Ղարասուբազար քաղաքներում. զարգացած էին հատկապես կաշեգործությունը, հյուսնությունը, դարբնությունը, որմնադրությունը, ջուլհակությունը, ոսկերչությունը, բրուտագործությունը, կոշկակարությունը ևն: Մեծ թվով հայեր զբաղվում էին այգեգործությամբ, դաշտավարությամբ և անասնապահությամբ՝ արտահանելով իրենց արտադրանքի մի մասը: Ղ-ի հայերը ճանաչված զինեգործներ էին և, XVIII դ. գերմանացի ճանապարհորդ Է. Կլեմանի վկայությամբ, նրանք զինին օգտագործում էին «ջրի նման»: Ղրիմահայերը բաժանված էին սոցիալական տարբեր խմբերի: Ունևոր դասը ներկայացնում էին հարուստ վաճառականները, հողատերերը, վաշխառուները (Կաֆայում՝ Պահլավունիք, Մուղալենք, Դարիջանենք, Աղամալենք գերդաստանները), ուռճացած արհեստավորները, որոնք կրում էին իշխան, խոջա, էմիր, բեյ տիտղոսները: Դասակարգային սանդուղքի ստորին ծայրում գտնվում էին քայքայված առևտրականներն ու արհեստավորները, աշխատավոր գյուղացիները՝ «ռամիկ ժողովուրդը»: Կաֆայում և Սուդակում XIV—XV դդ. կային նաև վարձու հայ բանվորներ: Հայ աշխատավորությունը ենթակա էր կրկնակի՝ սոցիալական և ազգային ճնշման, հարկեր ու տուրքեր էր վճարում մի կողմից «սեփական» վերնախավին և եկեղեցուն, մյուս կողմից՝ ջենովական և թուրք-թաթարական իշխանություններին: Ջենովացիներին հայերը վճարում էին հողային, ադի, պարենային, շինարարության հարկ, տարատեսակ առևտրական մաքսեր, բարձր գլխահարկ (հույների 179 և հրեաների 75 սոմոյի դիմաց՝ 749 սոմո), իսկ Ղրիմի խանության գանձարանին՝ ուշուր (բերքի տասնորդական մասը), զիքեաթ (անասուններից և թռչուններից ստացված եկամտի 1/5-ը), հոգևոր հարկ: Հայերին կաթոլիկացնելու նպատակով, Կաֆայում Հռոմի ստեղծած (1318) եպիսկոպոսության և հայ դոմինիկյան միաբանության (1333) գործ դրած ջանքերով, ջենովական գաղութային իշխանությունների աջակցությամբ XIV—XV դդ. որոշ հաջողություն ձեռք էր բերվել միայն հայ առևտրա-վաշխառուական վերնախավի շրջանում, իսկ հայ աշխատավորական զանգվածը համառ դիմադրություն էր ցույց տալիս: 1768—74-ի ռուս-թուրքական պատերազմից հետո ցարական կառավարությունը, Ղ. Ռուսաստանին միացնելու խնդրին համապատասխան, իրականացնում է քրիստոնյա ազգաբնակչության տեղահանումը թերակղզուց: 1778-ին Ղ-ից Ազովի նահանգ վերաբնակեցվեցին 12.598 հայեր, և միջնադարյան ղրիմահայ գաղութը վերացավ:

Նոր Նախիջևանից, Թուրքիայից և այլ վայրերից հայերի Ղ. տեղափոխվելու հետևանքով, XVIII դ. վերջին և XIX դ. սկզբին ղրիմահայ գաղթավայրը վերականգնվել է: XIX—XX դդ. հայերը հիմնականում կենտրոնացած էին Հին Ղրիմում, Ղարասուբազարում, Սիմֆերոպոլում, Եվպատորիայում, Արմյանսկում, Թեոդոսիայում, Կերչում, Յալթայում և մի շարք գյուղերում: XIX դ. 60-ական թթ. նրանց թիվը հասնում էր 7000-ի, դարավերջին՝ 9000-ի, 1913—14-ին՝ 14—15 հզ., չհաշված հարյուրավոր այն ընտանիքները, որոնք ռուսահպատակություն չէին ընդունել: 1779-ի և 1799-ի ցարական հրովարտակներով Հին Ղրիմի և Ղարասուբազարի հայ համայնքներն ունեին ինքնավարական մարմիններ: Հին Ղրիմում 1808—70-ին գործում էր հայկ. քաղաքային ռատուշան, իսկ Ղարասուբազարում 1790—1871-ին՝ կաթոլիկների դատարանը: Դրանք տիպիկ բուրժ. ինքնավարական մարմիններ էին, վարում էին նշված համայնքների վարչա-տնտեսական և դատական գործերը: Նոր շրջանում ևս ղրիմահայերի հիմնական զբաղմունքներն էին առևտուրը, արհեստագործությունը, երկրագործությունը: Հայերի առևտրական գործունեությունը ներառում էր մեծածախ և մանրածախ առևտուրը, որի ծավալմանը մինչև XIX դ. 60—70-ական թթ. նպաստում էին 1779-ի և 1799-ի հրովարտակներով տրված արտոնությունները: Հայ առևտրականները Ղ. էին բերում մետաքսյա և բրդյա գործվածքներ, պատրաստի հագուստեղեն, բրինձ, զինի, ձեթ, սուրճ, պղինձ, ձյութ, շինանյութ ևն, արտահանում՝ կաշվեղեն, ալյուր, ցորեն, վարսակ, բուրդ ևն: Ղրիմահայ հարուստ վաճառականները մասնակցում էին կայսրության քաղաքներում կազմակերպված տոնավաճառներին: Ղրիմի պատերազմի ժամանակ (1853—56) հայ վաճառականությունը իր վրա էր վերցրել Սևաստոպոլի ռազմ. կարիքների մատակարարման զգալի բաժինը, իսկ 1860—70-ական թթ. նկատելի ներդրում կատարեց նահանգում ծավալված երկաթուղային շինարարության մեջ: Ետռեֆորմյան շրջանում, հարմարվելով կապիտալիստական զարգացման ընթացքին, ղրիմահայ մեծահարուստ առևտրական դասը ընդլայնեց իր կապիտալի շրջանառության ոլորտը: Դարավերջին Ղ-ում միայն գիլդիաների մեջ ընդգրկված 4936 վաճառականներից 523-ը (10,6%-ը) հայեր էին, առևտրի մեջ նրանց ներդրած կապիտալը հավասար էր 5 մլն ռ.: Սակայն ղրիմահայ առևտրական կապիտալի զգալի բաժինը կազմում էր գիլդիաներից և հաշվառումից դուրս տարատեսակ արտոնագրերով մանրածախ առևտուր անող հայ ընտանիքների դրամագլուխը: XIX—XX դդ. հողագործության մեջ առևտրական կապիտալի ներթափանցման հետևանքով Ղ-ում առաջացել էր հայ խոշոր հողատերերի բավականին բազմանդամ մի խավ (Ստեփանյաններ, Օբերովներ, Սպենդիարովներ, Թոփալովներ, Բենկլիևներ ևն): Ընդարձակ հողատարածություն-

ների տեր էր հայ եկեղեցին: Ղ-ի տնտեսության մեջ XIX դ. շարունակում էր կարևոր դեր խաղալ արհեստագործությունը: Հայերը ճանաչված ոսկերիչներ էին, հյուսներ, դարբիններ, որմնադիրներ, քարտաշներ, դերձակներ, հացթուխներ, գինեգործներ: Մեծ թիվ էին կազմում արևմտահայ արհեստավորները: Որոշ ունևոր հայեր XIX դ. 2-րդ կեսից իրենց կապիտալը ներդրել էին գործարանային արտադրության մեջ. ունեին կաշեմշակման և կոշիկի, պահածոների, կղմինդրի և աղյուսի, օճառի ու մոմի, սննդի ևն ձեռնարկություններ (Մոմջյաններ, Ռաֆայելյաններ, Կնորկովներ, Սրապիոնյաններ): Հայերը ակտիվորեն մասնակցում էին նաև Ղ-ի բարեկարգմանն ու զարգացմանը: Հ. Այվազովսկու նյութական օգնությամբ և նախաձեռնությամբ 1888-ին Թեոդոսիան ապահովվեց խմելու ջրով. իրեն պատկանող Սուբաշի լճից նա քաղաքին օրական նվիրաբերում էր 50 հզ. դույլ ջուր, որի համար անցկացվեց 30 *կմ* երկարությամբ ջրմուղ: «Էլեկտրիչեստվո» ընկերության մեխանիկ Ն. Շահվերդյանի նախագծով Սիմֆերոպոլում 1901-ին առաջին անգամ անցկացվեց արտաքին էլեկտրական լուսավորություն: XIX—XX դդ. Ղ. անցած հայ գաղթականության մեծ մասը, սակայն, զրկված էր որևէ լուրջ ունեցվածքից: Ղրիմահայերը հիմնականում գրանցված էին մեշչանների (քաղաքաբնակների) դասում: Ժամանակի ընթացքում այդ դասի մեջ տեղի ունեցած շերտավորման հետևանքով առաջացավ առևտրա-արհեստագործական հարուստ մի խավ, որը վաճառականների, խոշոր հողատերերի և գործարանատերերի հետ միասին ներկայացնում էր գաղութի ունևոր վերնաշերտը: XIX դ. 2-րդ կեսին, կապիտալիզմի զարգացման պայմաններում, ղրիմահայերը հաղորդակից են դառնում համառուսական անցուդարձերին, ընդլայնվում են նրանց հասարակական կյանքի շրջանակները: XX դ. սկզբին ղրիմահայերի առանձին ներկայացուցիչներ ս-դ. շարժման կազմակերպիչներ էին. հայտնի է Արմեն Բահաթրյանը, որը 1905—07-ին հեղափոխական լայն գործունեություն էր ծավալել և, Տավրիկիայի նահանգական ժանդարմական վարչության պետի տվյալներով, հանդիսանում էր Ղ-ում «սոցիալ-դեմոկրատական կազմակերպության պարագլուխը»: 1907-ին նա փորձել է թերակղզում վերականգնել կուսակցական աշխատանքը, որի համար հետապնդվել է ոստիկանության կողմից: 1912—13-ի Բալկանյան պատերազմների ժամանակ Ղ-ում աշխուժացել է հնչակյանների գործունեությունը, ըստեղծվել է կուսակցության Ղ-ի բաժանմունք:

Մշակույթը: Ղրիմահայ գաղթավայրերում ազգային մշակույթը բավականին ծաղկուն վիճակ է ապրել: Դրան նշանակալից չափով նպաստել են Կաֆայում, Սուրխաթում, Ղարասուբազարում, Ս. Խաչ վանքում գործող հայկ. դպրոցները, որոնցում աստվածաբանության հետ դասավանդում էին փիլիսոփայություն, գրչության արվեստ, տոմարագիտություն, մանրանկարչություն, երաժշտություն, հռետորական արվեստ, բնագիտություն, բժշկություն (տես *Ղրիմի հայկական դպրոցներ*): Ղ. հայ գրչության ճանաչված կենտրոններից էր՝ շնորհիվ Կաֆայի, Սուրխաթի, Ղարասուբազարի գրչության նշանավոր վայրերի, որոնցից մեզ են հասել մոտ 300 ձեռագրեր: (Տես *Ղրիմի մանրանկարչության դպրոց*): Միջնադարյան հայ գրականության մեջ արժանի տեղ են գրավում ղրիմահայ տաղասացները՝ Սիմեոն, Խաչպեկ, Վարդան, Վրթանես Կաֆացիները, Մարտիրոս Ղրիմեցին: Որոշակի զարգացման են հասել գիտության մի շարք բնագավառները: Բժշկության ասպարեզում հայերն այնքան էին առաջադիմել, որ թաթար խաների բժիշկները հիմնականում նրանք էին: XIV—XVIII դդ. հայերը ծավալել են շինարարական լայն գործունեություն՝ պահպանելով ազգային ճարտ. արվեստի լավագույն ավանդույթները: Նշանավոր հուշարձաններ են Ս. Խաչ վանքը (Սուրխաթ, 1358), Ս. Սարգսի (Թեոդոսիա, XII—XIII դդ.), Հովհաննես Մկրտչի (Թեոդոսիա, 1348), Հրեշտակապետաց (Թեոդոսիա, 1408), Ս. Գևորգի (Թեոդոսիա, XIV—XV դդ.), Ս. Նիկողայոսի (Թեոդոսիա, XII—XIII դդ.) եկեղեցիները, Բախչեյի գյուղի Ս. Փրկիչ վանքը (XIV դ.) ևն: Թաթարական հարձակումներին դիմագրավելու նպատակով հայ համայնքը XIV—XV դդ. Կաֆան շրջապատել էր աշտարակակիր երկրորդ պարսպով (կոչվում էր Հայոց բերդ): 1316-ին Կաֆայում հայերն անցկացրեցին ջրմուղ: Հայ շինարարները նման ջրմուղներ էին կառուցել Դվույակորնի ծովախորշում, Ս. Խաչ վանքում, Թոփլի հայկ. գյուղում: XIX—XX դդ. հայկ. բոլոր համայնքներում գործում էին ծխական դպրոցներ, հրատարակվում գրքեր և հանդեսներ, կազմակերպվում ազգային մշակութային զանազան միջոցառումներ: 1905-ին Տավրիկիայի նահանգի 9 հայկ. դպրոցներում սովորում էր 250 աշակերտ: Ամենանշանավորը *Խալիբյան վարժարանն* էր (1858—71), որը հիմնադրել էր Գ. Այվազովսկին: Ուսումնարանին կից գործում էին մեծահասակների համար «լսարան կենցաղօգուտ գիտելյաց»-ը, տպարան, որը հրատարակում էր հայերեն և ռուսերեն դասագրքեր, գեղարվեստական, պատմական, թարգմանական գրականություն, տարեգրքեր: Թեոդոսիայում հրատարակվել են «Մասյաց աղավնի» (1860—65), «Դաստիարակ» (1873—74) պարբերականները: XIX—XX դդ. ղրիմահայերից հռչակի արժանացած արվեստագետներ էին Հ. *Այվազովսկին*, նրա աշակերտ Մ. *Մահտեսյանը*, կոմպոզիտորներ Ա. *Սպենդիարյանը*, Ք. *Կարա-Մուրզան*, Ա. *Քաղցածյանը*, ջութակահար և մանկավարժ Հ. *Նալբանդյանը* և ուրիշներ:

*Գրկ.* Տեր-Աբրահամյան Հ., Պատմութիւն Խրիմու..., Թեոդոսիա, 1865: Քուշներյան Ք., Պատմութիւն գաղթականութեան Խրիմու հայոց, Վնտ., 1895: Սուրխաթյան Գ., Ղրիմի հայոց վանքը, «Մուրճ», № 6, 1904: Թումանյան Պ., Ղրիմի հայերը, «Արոր», № 9—12, 1911: Ալպոյաճյան Ա., Պատմություն հայ գաղթականության, Կահիրե, 1941: Միքայելյան Վ. Ա., Ղրիմի հայկական գաղութի պատմություն. 1800—1917, Ե., 1970: Старокадомская М. К., Очерки по социально-экономической истории генуэзской Каффы конца XIII— первой половины XV вв., М., 1951.

*Վ. Միքայելյան*

**ՂՐԻՄ** (ն. Թոփտի), հայաբնակ գյուղ ՌՍՖՍՀ Ռոստովի մարզի Մյասնիկովսկի շրջանում, շրջկենտրոնից 3 *կմ* հյուսիս-արևելք: Կոլտնտեսությունն զբաղվում է հացահատիկի մշակությամբ, անասնապահությամբ: Ղ-ում գործում է շրջանային ինկուբատորա-թռչնաբուծական կայանը, միջկոլտնտեսային շինարարական կազմակերպությունը և կոլտնտեսային աղյուսի գործարանը: Ունի միջնակարգ դպրոց, գրադարան, կուլտուրայի տուն: Գյուղում պահպանվել են Ս. Փրկիչ եկեղեցին, Կենտրոնական աղբյուր-հուշարձանը: Ղ. հիմնադրել են Ղրիմից եկած հայերը, 1779-ին: Այստեղ են ծնվել գեն.-մայոր, ռազմ. գիտ. դ-ր Խ. Ջելաուխովը, կուսակցական և պետ. գործիչ Ս. Սրապիոնյանը (Լուկաշին), հեղափոխական գործիչ, գրող, քննադատ Ե. Չուբարը, կուսակցական գործիչ, «Մուրճ և մանգաղ» ամսագրի խմբագիր Թ. Գ. Չուբարը, գյուղատնտես Թ. Կատարյանը, գեոքիմիական գիտ. դ-ր Ն. Այդինյանը, կենսբ. գիտ. դ-ր Հ. Չորպայանը:

**ՂՐԻՄԻ ԱՍՏՂԱԴԻՏԱՐԱՆ**, ՍՍՀՄ ԳԱ գիտահետազոտական հիմնարկություն: Հիմնադրվել է 1908-ին, որպես *Պուլկովոյի աստղադիտարանի* հվ. բաժանմունք՝ Սիմեիզայի մոտ գտնվող մասնավոր սիրողական աստղադիտարանի հիման վրա: 1945-ին Բախչիսարայ քաղաքից 12 *կմ* հեռավորության վրա, լեռներում, կառուցվել են նոր մասնաշենքեր (ավան Նաուչնի): Ղ. ա-ի աշխատանքների կարևորագույն ուղղությունները կապված են աստղերի և Արեգակի մթնոլորտներում տեղի ունեցող ֆիզիկական պրոցեսների ուսումնասիրման հետ, հետազոտվում են միգամածություններ և աստղային համակարգեր: Հետազոտություններ են տարվում նաև արտամթնոլորտային աստղագիտության և ռադիոաստղագիտության բնագավառներում: Նաուչնի ավանում գտնվող հիմնական գործիքներն են. ակադեմիկոս Գ. Ա. Շայնի անվ. 2,6 *մ*-անոց ռեֆլեկտորը, 122 *սմ*-անոց և 66 *սմ*-անոց ռեֆլեկտորները, 50 *սմ* տրամագծով հայելիով մենիսկային աստղադիտակը, 40 *սմ*-անոց երկակի աստղագիրը: Արեգակը հետազոտվում է աշտարակային հեռադիտակով, որն ունի Արեգակի սպեկտրի, Արեգակի վրա գտնվող մագնիսական դաշտերի ուսումնասիրման, Արեգակի կինոնկարահանման սարքեր, ինչպես նաև արտախավարումային պսակագրով և այլ գործիքներով: Կան տիեզերական ճառագայթների ուսումնասիրման տեղակայանքներ: Սիմեիզայի մոտ գտնվող հին աստղադիտարանում տեղադրված է 70 *սմ*-անոց ռեֆլեկտոր: Սիմեիզայից 3 *կմ* հեռավորության վրա գտնվում է Ղ. ա-ի ռադիոաստղագիտական բաժինը, որտեղ տեղադրված են 22 *սմ*-անոց ռադիոաստղադիտակ (միլիմետրանոց ալիքների տիրույթում դիտարկումների համար) և այլ գործիքներ: Ղ. ա. հրատարակում է «Իզվեստիա» («Известия») հանդեսը (1947-ից):

**ՂՐԻՄԻ ԲԱՐԲԱՌ**, տես *Նոր Նախիջևանի բարբառ*:

**ՂՐԻՄԻ ԻՆՔՆԱՎԱՐ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ (ՂԻՍՍՀ)**, ստեղծվել է 1921-ի հոկտեմբերի 18-ին, ՌՍՖՍՀ-ի կազմում: Մայրաքաղաքը՝ Սիմֆերոպոլ: 1945-ի հունիսի 30-ին վերակազմավորվել է ՌՍՖՍՀ-ի Ղրիմի մարզի, որը 1954-ի փետր. 19-ին անցել է ՈւՍՍՀ-ին:

**ՂՐԻՄԻ ԼԵՌՆԵՐ**, գտնվում են Ղրիմի թերակղզու հարավում: Երկարությունը մոտ 150 *կմ* է, լայնությունը՝ մինչև 50 *կմ*: Կազմված են Գլխավոր (Հարավային) լեռնաշղթայից (Յայլա) և կուեստային տիպի երկու առաջնային թմբաշարերից: Յայլան արմ. մասում սարավանդաձև է և բաժանվում է Այպետրիի, Յալթայի, Նիկիտի, Բաբուգանի, Չաթիրդաղի, Դեմերջիի, Կարաբիի և այլ յայլաների: Ամենաբարձր գագաթը Ռոման Կոշն է (1545 *մ*): Առաջնային թմբաշարերը համեմատաբար ցածր են, Միջին կամ Ներքին (մինչև 750 *մ*) և Հյուսիսային կամ Արտաքին (մինչև 350 *մ*): Ղ. լ. Հարավային Եվրոպայի Ալպյան ծալքավոր մարզի հատվածն են՝ կազմված կավային թերթաքարերից, ավազաքարերից, կրաքարերից: Զարգացած են կարստային երևույթները: Կլիման Ղրիմի հվ. ափին միջերկրածովյան տիպի է, հունվարի միջին ջերմաստիճանը 1—4°C է, հուլիսինը՝ 24°C, տարեկան տեղումները՝ 600 *մմ*, սարավանդին՝ հունվարին —1°C-ից —4°C, հուլիսին՝ 15—16°C, տարեկան տեղումները՝ 550—1200 *մմ*: Գետերը (Սալգիր, Բուրուլչա, Բիյուկ Կարասու ևն) սնվում են մթնոլորտային տեղումներով և ստորերկրյա ջրերով: Տարածված են լեռնաանտառային գորշ, լեռնամարգագետնային սևահողանման և լեռնային սևահողերը: Լանդշաֆտները լեռնաանտառային, անտառատափաստանային և անտառաթփուտային են:

**ՂՐԻՄԻ ԽԱՆՈՒԹՅՈՒՆ**, *Ոսկե հորդայից* անջատված թաթարական ֆեոդալական պետություն Ղրիմում, XV—XVIII դդ.: Բաթու խանի առաջնորդությամբ մոնղոլ-թաթարները, 1239-ին տիրելով Ղրիմի տափաստանային մասին, իրենց ենթարկեցին տեղի բնակիչներին (ալաններ, պոլովցիներ, սլավոններ, հայեր, հույներ): XIII դ. վերջից Ղրիմը դարձավ քոչվոր նվաճողների վերնախավի՝ ֆեոդալական Շիրին, Բարին, Արգին, Ղփչաղ և այլ տոհմերի համար, որոնց տնտեսության հիմքը քոչվոր անասնապահությունն էր: XIII—XIV դդ. սահմանագծում այստեղ ստեղծվեց Ոսկե հորդայի խանի հատուկ կուսակալություն, որի կենտրոնը Սուրխաթ (Հին Ղրիմ) քաղաքն էր: Երկպառակտչական արյունալի պայքարից հետո՝ 1433-ին իշխանությունն անցավ Գիրեյ տոհմին, և մայրաքաղաք դարձավ Բախչիսարայը: Դևլեթ-Հաջի Գիրեյը (մահ. 1466-ին) Լիտվական մեծ իշխանության աջակցությամբ 1443-ին ստեղծեց Ոսկե հորդայից անկախ Ղ. խ., որն ընդգրկում էր նաև ստորին Մերձդնեպրը: Մենգլի Գիրեյ խանի օրոք (1468—1515) օսմանյան զորքերը 1475-ին ներխուժեցին Ղրիմ, ջախջախեցին հյուսիս-մերձսևծովյան ջենովական գաղթավայրերը և իրենց գերիշխանությունը հաստատեցին Ղ. խ-յան վրա: XVI—XVII դդ. Ղ. խ-յան թաթարները ասպատակեցին Ռուսաստանի, Ուկրաինայի, Լեհաստանի տարածքը, մի քանի անգամ պաշարեցին Մոսկվան, Տուլան ևն, գերեվարեցին հազարավոր ռուսների: XVII դ. վերջին Թուրքիայի դեմ պատերազմող ռուս. զորքերը 1687—89-ին ռազմ. արշավանքներ ձեռնարկեցին նրա դաշնակից Ղ. խ-յան դեմ: 1774-ի Քյուչուք—Կայնարջիի պայմանագրով Ղ. խ. դադարեց Թուրքիայի վասալը լինելուց և անկախ հայտարարվեց, բայց Ռուսաստանի գերիշխանության ներքո, իսկ 1783-ին վերջնականապես միացվեց Ռուս. կայսրությանը:

Ղ. խ-ում հայերը, թաթարներից հետո, իրենց թվով (ավելի քան 300 հզ. մարդ) երկրորդն էին: Մեծ էր նաև հիմնականում երկրագործությամբ, արհեստներով և առևտրով զբաղվող հայերի տնտ. դերը: Մինչև օսմանյան գերիշխանության հաստատումը հայ-թաթարական փոխհարաբերությունները հարաբերաբար բարեկամական բնույթ էին կրում: Գիրեյ տոհմի բժիշկները, խանության դրամատան վարիչները, որպես կանոն, հայեր էին լինում: XV դ. վերջից հայերն ընկան կրկնակի՝ սուլթանական և խանական հարկման տակ, ենթարկվեցին կրոնական հալածանքների և մասամբ արտագաղթեցին (տես նաև *Ղրիմ*, Հ ա յ ե ր ը Ղ ր ի մ ու մ մասը):

*Գրկ.* Մ ի ք ա յ ե լ յ ա ն Վ. Ա., Ղրիմի հայկական գաղութի պատմություն. 1800—1917, Ե., 1970: М и к а э л я н В. А., На Крымской земле, Е., 1974; С м и р н о в Н. А., Россия и Турция в XVI—XVII вв., т. 1—2, М., 1946.

**ՂՐԻՄԻ ԿՈՆՖԵՐԱՆՍ 1945**, Յ ա լ թ ա յ ի կ ո ն ֆ ե ր ա ն ս 1945, հակահիտլերյան կոալիցիայի երեք դաշնակից պետությունների ղեկավարների (ՍՍՀՄ Ժողկոմխորհի նախագահ Ի. Ստալին, ԱՄՆ պրեզիդենտ Ֆ. Ռուզվելտ, Մեծ Բրիտանիայի պրեմիեր մինիստր Ու. Չերչիլ) կոնֆերանս՝ արտգործմինիստրների, շտաբների պետերի և այլ խորհրդականների մասնակցությամբ: Կայացել է Յալթայի մոտ (Լիվադիա), փետր. 4—11-ը, երբ սովետական բանակի հզոր հարվածների հետևանքով ռազմ. գործողությունները տեղափոխվել էին գերմ. տերիտորիան և պատերազմը թևակոխել էր իր ավարտական փուլը: Ղ. կ-ում համաձայնություն կայացվեց ֆաշիստական Գերմանիայի վերջնական ջախջախման, նրա նկատմամբ դաշնակցային հսկողության, ռազմատուգանքների հարցերի վերաբերյալ, ընդունվեցին աշխարհի ետպատերազմյան կազմակերպման, հատկապես *Միավորված ազգերի կազմակերպության* (ՄԱԿ) ստեղծման ընդհանուր քաղ. սկզբունքները: Ղ. կ. ընդունեց «Ազատագրված Եվրոպայի մասին դեկլարացիա», որով դաշնակից տերությունները պատրաստակամություն հայտնեցին համաձայնեցնել իրենց գործողությունները ազատագրված Եվրոպայի քաղ. և տնտ. խնդիրները լուծելիս: Պայմանավորվածություն ձեռք բերվեց, որ սովետա-լեհական սահմանն պետք է դառնա «Քերզոնի գիծը», որ Լեհաստանի տարածքը զգալիորեն կընդլայնվի հս-ում և արմ-ում: Ղ. կ. մի շարք համաձայնություններ ընդունեց Հարավսլավիայում ժամանակավոր միացյալ կառավարության պառլամենտ ստեղծելու վերաբերյալ: «Հեռավոր Արևելքի հարցերի շուրջը երեք մեծ տերությունների համաձայնագրով» նախատեսվում էր ՍՍՀՄ-ի մուտքը Ճապոնիայի դեմ պատերազմի մեջ՝ Գերմանիայի կապիտուլյացիայից 2—3 ամիս հետո: Մասնավորապես նշվեց, որ պատերազմն ավարտվելուց հետո ՍՍՀՄ-ին կվերադարձվեն Հարավային Սախալինը՝ հարակից կղզիներով և կտրվեն Կուրիլյան կղզիները: Ղ. կ-ի բազմաթիվ որոշումներ այդպես էլ չիրականացան պատերազմն ավարտվելուց հետո սոցիալիստական պետությունների դեմ «սառը պատերազմի» ուղին բռնած արմ. տերությունների մեղքով:

*Գրկ.* И с р а э л я н В. Л., Дипломатическая история Великой Отечественной войны 1941—1945, М., 1959; История внешней политики СССР, ч. 1, 1917—1945, М., 1966.

**ՂՐԻՄԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐ**, գործել են XI դարից սկսած, զարգացում են ապրել XIV—XV դդ.: Նշանավոր էին Կաֆայից (Թեոդոսիա) ոչ հեռու գտնվող Ս. Անտոն անապատի դպրոցը (1425—50) և Ս. Խաչ վանքի ճեմարանը (XIV — XVII դդ.): Անապատի դպրոցում աչքի է ընկել հռետոր, իմաստասեր Սարգիսը, Ս. Խաչ վանքի ճեմարանում՝ րաբունապետ Ստեփանոս Թոխաթեցին, Հակոբ Կաֆայեցին: Դպրոցներ են եղել նաև Ղարասուբազարի, Սուրխաթի հայկ. եկեղեցիներին կից: Դրանց կյանքում աշխուժացում է նկատվում Ղրիմը Ռուսաստանին միանալուց (1783) հետո: Նոր Նախիջևան արտագաղթած հայերի որոշ մասը վերադառնում է Ղրիմ: XX դ. սկզբին ստվարանում է Արևմտյան Հայաստանից գաղթած հայերի թիվը: Օգտվելով ռուս. կառավարության տված արտոնություններից՝ հայերը դպրոցներ են հիմնում Ղրիմի տարբեր քաղաքներում: Դրանց մեջ առանձնանում է Մանվել Գյումուշխանեցու նախաձեռնությամբ և հայ հասարակայնության աջակցությամբ հիմնադրված Ղարասուբազարի միդասյան (1880-ական թթ. երկդասյան) դպրոցը (1816), որը Լազարյան ճեմարանի նախապատրաստականներից էր: Այստեղ է սովորել Կարա-Մուրզան: Ղարասուբազարում գործել է նաև հայ կաթոլիկների դպրոց (1822-ից): 1800-ին Սիմֆերոպոլում հիմնադրվել է միդասյան ծխական երկսեռ դպրոց, որը վերելք է ապրել Ա. Բահաթրյանի, Հովի. Նազարյանի օրոք: Այստեղ 1895-ին քառաձայն երգչախումբ է ստեղծել նրա սան Ա. Սպենդիարյանը: 1860-ին Սիմֆերոպոլում հիմնվել է ևս մեկ երկդասյան ծխական դպրոց: Սիմֆերոպոլի կաթոլիկ հայերը նույնպես ունեին իրենց դպրոցը (հիմն. 1863-ին): Դպրոցներ են հիմնադրվել նաև Թեոդոսիայում (1817), Կերչում, Արմյանսկում, Եվպատորիայում, Յալթայում: 1903-ին Ղրիմում գործել է տարրական ծխական երկսեռ 10 դպրոց, որտեղ ավանդվում էին հայոց լեզու, թվաբանություն, ռուսաց լեզու, հետագայում՝ բարոյագիտություն, քերականություն, աշխարհագրություն ևն: Ղ. հ. դ-ից ամենանշանավորը Թեոդոսիայի *Խալիբյան վարժարանն* էր:

*Ա. Իգնատյան*



Ղրիմի հարավային ափը

**ՂՐԻՄԻ ՀԱՐԱՎԱՅԻՆ ԱՓ**, նեղ (2—8 *կմ*) բլրահարթավայրային շերտ (տեղ-տեղ՝ դարավանդաձև) Ղրիմի թերակղզու հարավային ափի երկայնքով՝ Այա հրվանդանի և Կարադաղ զանգվածի միջև: Հս-ից սահմանափակված է Ղրիմի լեռների Գլխավոր լեռնաշարքով: Բնության առանձնահատկությամբ բաժանվում է 3 մասի. արևմտյան՝ Այա հրվանդանից մինչև Ալուշտա (տիպիկ միջերկրածովյան կլիմայով), կենտրոնական՝ Ալուշտայից մինչև Պրիվետնայա (ավելի զով և չոր կլիմայով) և արևելյան՝ Պրիվետնայայից մինչև Կարադաղ լեռը (ցամաքային տիպի կլիմայով): Ղ. հ. ա. կազմված է կավային թերթաքարերից՝ կտրտված խոր ձորերով ու հովիտներով: Հանդիպում են բյուրեղային ապարների ցրոններ ու լակոլիթներ: Տարածված են գորշ լեռնաանտառային, կարմրագորշ և շագանակագույն հողերը: Կա բուսական երկու գոտի: Ստորին գոտում աճում են միջերկրածովյան տեսակներով քսերոֆիտային տիպի բույսերը, վերին գոտում՝ լայնատերև անտառները: Այգիներում ու պուրակներում աճեցվում են դափնեկեռաս, մագնոլիա, հովհարաձև արմավենի: Զարգացած է խաղողագործությունը և ծխախոտագործությունը: Միութենական առողջարաններից է: Այստեղ են Յալթա, Ալուշտա, Ալուպկա, Սիմեիզ, Գուրզուֆ, Միսխոր, Լիվադիա առողջարանները:

**ՂՐԻՄԻ ՄԱՆՐԱՆԿԱՐՉՈՒԹՅԱՆ ԴՊՐՈՑ**, հայկական մանրանկարչության դպրոց Ղրիմում: Ղրիմի հայկ. գաղութը գոյատևել է XIII—XIX դդ.: Այստեղ կառուցված եկեղեցիներում և վանքերում գրվել և նկարազարդվել են բազմաթիվ ձեռագրեր (միայն Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանում պահվում են Ղրիմում ընդօրինակված շուրջ 300 հայերեն ձեռագրեր): Ղ. մ. դ. հայ մանրանկարչության կարևոր ճյուղերից է: Ղրիմի հայ նկարիչների ստեղծագործություններում նկատելի են մայր երկրի արվեստի ավանդներն ու կիլիկյան մանրանկարչության ազդեցությունը (XIV դ. վերջին Ղրիմ էին գաղթել նաև Կիլիկիայից): Ղրիմի մանրանկարչության վրա որոշակի ազդեցություն է թողել նաև նոր միջավայրը, ուր ապրել և ստեղծագործել են այլ ժողովուրդներ: Հայ մանրանկարիչները ստեղծել են մի ուրույն արվեստ, որը բնորոշվում է բարձր պրոֆեսիոնալիզմով, գծային ու երփներանգային ձևերի յուրօրինակ զուգորդումով: Ֆոնի ոսկին հաճախ փոխարինվել է մուգ կապույտ գույնով, որը մանրանկարներին հաղորդել է ընդգծված արտահայտչականություն և խորհրդավորություն: Գրչության առավել նշանակալից կենտրոններն էին Կաֆան (այժմ՝ Թեոդոսիա) և Սուրխաթը (այժմ՝ Ստարի Կրիմ): Այստեղ աշխատել են Գրիգոր Սուքիասանցը, Առաքելը, ողջ Ղրիմում հռչակված Նատերի որդիներ Ավետիսը և Ստեփանոսը, վերջինիս որդի Հովհաննեսը: Երբ XV դ. վերջին թաթարները և թուրքերը գրավել են Ղրիմը, հայ գաղութի մշակութային կյանքըն անկում է ապրել: Գրչատների գործունեությունը կրկին աշխուժացել է XVII դ.: Նկարիչներից են Նաղաշ Էոլպեն, Նիկողայոս Ծաղկարարը, Խասպեկը, որոնք շարունակել են իրենց նախորդների լավագույն ավանդույթները: Տպագրական տեխնիկայի երևան գալով մանրանկարչական արվեստը իր տեղը զիջել է փորագրությանը, հաստոցային գեղանկարչությանը: Այս ասպարեզներում ևս Ղրիմի հայերը նշանակալից հաջողություններ են ունեցել, որի ամենավառ արտահայտությունը աշխարհահռչակ ծովանկարիչ Հովհաննես Այվազովսկու ստեղծագործությունն է:



Խ ա ս պ ե կ. Կարպիանոսի դիմանկարով խորան, մանրանկար 1666-ին Կաֆայում նկարազարդված Ավետարանից (Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 6606)

Ն[ի կ ո ղ ա յ ո ս Ծ ա ղ կ ա ր ա ր. «Խաչելություն», մանրանկար 1684-ին Կաֆայում նկարազարդված Ավետարանից (Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 6341)



Պատկերազարդումը տես 41-րդ էջից առաջ՝ ներդիրում:

*Գրկ.* Ա լ պ ո յ ա ճ յ ա ն Ա., Պատմություն հայ գաղթականության, հ. 2, Կահիրե, 1955: Մ ի ք ա յ ե լ յ ա ն Վ., Ղրիմի հայկական գաղութի պատմություն, Ե., 1964: Д у р н о в о Л., Краткая история древнеармянской живописи, Е., 1957; К о р х м а з я н Э., Армянская миниатюра Крыма, Е., 1978.

*Է. Կորխմազյան*

**ՂՐԻՄԻ ՄԱՐԶ**, Ուկրաինական ՍՍՀ-ի կազմում: Կազմվել է 1945-ի հունիսի 30-ին: Մինչև 1954-ի փետրվ. 19-ը եղել է ՌՍՖՍՀ-ի կազմում: Տարածությունը 27 հզ. *կմ²* է, բն. 2208 հզ. (1980): Բաժանվում է 14 շրջանի: Վարչական կենտրոնը՝ Սիմֆերոպոլ: 1958-ին պարգևատրվել է Լենինի, 1970-ին՝ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

Բնությունը տես *Ղրիմ*, *Ղրիմի լեռներ*, *Ղրիմի հարավային ափ* հոդվածներում:

**Բնակչությունը**: Հիմնական մասը ռուսներ և ուկրաինացիներ են: Կան նաև բելոռուսներ, հրեաներ, հայեր և այլք: Առավել խիտ են բնակեցված Ղրիմի հվ. ափը և հս. նախալեռնային շրջանները: Միջին խտությունը 1 *կմ²* վրա 80,8 մարդ է, քաղաքային բն. 67%: Կարևոր քաղաքներն են՝ Սիմֆերոպոլը, Սևաստոպոլը, Կերչը, Յալթան, Եվպատորիան, Սակին, Թեոդոսիան են:

**Տնտեսությունը**: Ղ. մ. լեռնահանքային և քիմ. արդյունաբերության, ինչպես նաև բարձր ինտենսիվությամբ բազմաճյուղ գյուղատնտ. շրջան է: Զարգանում են մեքենաշինական, սննդի, թեթև և շինանյութերի արդյունաբերության ճյուղերը: Էներգետիկ բազան Սիմֆերոպոլի, Սևաստոպոլի և Կամիշ Բուրունի ՊՇԷԿ-ներն են: Շահագործվում են գազի մի քանի հանքավայրեր: Կամիշ Բուրունում կա երկաթի հանքանյութի արդյունահանում և հարստացում, Կերչում՝ մետալուրգիական գործարան: Մեքենաշինությունը թողարկում է սարքավորումներ (գինեգործական արդյունաբերության համար), հեռուստացույցներ, գյուղատնտ. մեքենաների պահեստամասեր, տրակտորային կցիչներ, ամբարձիչ-տրանսպորտային սարքավորում: Կան նավանորոգարաններ: Սննդարդյունաբերությանը բաժին է ընկնում արդ. արտադրանքի շուրջ 50%-ը. առանձնանում են գինեգործական, պահածոների, ծխախոտի, վարդի ու նարդոսի եթերայուղի և մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության ճյուղերը:

**ՂՐԻՄԻ ՊԱՏԵՐԱԶՄ 1853—1856**, Ա ր ե վ ե լ յ ա ն պ ա տ ե ր ա զ մ, Ռուսաստանի պատերազմը Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի, Թուրքիայի և Սարդինիայի կոալիցիայի դեմ՝ Մերձավոր Արևելքում գերիշխանության համար: XIX դ. կեսին Մեծ Բրիտանիան և Ֆրանսիան դուրս մղեցին Ռուսաստանին մերձավորարևելյան շու-




կաններից և իրենց ազդեցությանը ենթարկեցին Թուրքիային: Նիկոլայ I-ի փորձերը՝ պայմանավորվելու Մեծ Բրիտանիայի հետ Մերձավոր Արևելքը ազդեցության ոլորտների բաժանելու վերաբերյալ հաջողություն չունեցան, և նա որոշեց ուղղակիորեն ազդել Թուրքիայի վրա: Պատերազմի առիթ ծառայեց Թուրքիայի կողմից ռուս. վերջնագրի մերժումը՝ Նիկոլայ I-ին Օսմանյան կայսրության ուղղափառ բնակչության «հովանավոր» ճանաչելու վերաբերյալ: 1853-ի մայիսին Ռուսաստանը խզեց դիվանագիտական հարաբերությունները Թուրքիայի հետ: Հունիսի 21-ին ռուս. զորքերը մտան Մոլդովայի և Վալախիայի իշխանությունները, որոնք անվանապես թուրք. սուլթանի գերիշխանության տակ էին: Ի պատասխան՝ հոկտ. 4-ին Թուրքիան (Անգլիայի և Ֆրանսիայի դրդմամբ) պատերազմ հայտարարեց Ռուսաստանին: Պատերազմական գործողություններ ծավալվեցին Դանուբի, Ղրիմի և Կովկասյան ռազմաճակատներում: Դանուբի վրա գեն. Մ. Գորչակովի ռուս. 82 հզ-անոց բանակի դեմ շարժվեց Օմեր փաշայի թուրք. 150 հզ-անոց բանակը: Ռուս. հրետանուն հաջողվեց ջախջախել թուրք. դանուբյան նավատորմիղը: Անդրկովկասում թուրք. 100 հզ-անոց բանակի դեմ կանգնած էին Ախալցիխայի, Ախալքալաքի, Ալեքսանդրապոլի և Երևանի թույլ կայազորները (մոտ 5 հզ. զինվոր): Ռուս. բանակի գլխավոր ուժերն այդ ժամանակ կռվում էին լեռնականների դեմ (տես *Կովկասյան պատերազմ 1817—1864*): Ղրիմից անհապաղ 16 հզ-անոց հետևակային մի դիվիզիա փոխադրվեց, կազմավորվեց հայ-վրացական 10 հզ-անոց աշխարհազոր, որը հնարավորություն տվեց կենտրոնացնել 30 հզ. զորք գեն. Բ. *Բեհբութովի* հրամանատարության ներքո: Թուրք. գլխավոր ուժերը (մոտ 40 հզ.) Կարսից շարժվեցին Ալեքսանդրապոլ (ճանապարհին թուրքերը ներխուժեցին Բայանդուր գյուղը, կոտորեցին հայ բնակիչներին), սակայն ռուս. զորամասերին հաջողվեց կանգնեցնել թշնամու առաջխաղացումը: Իսկ թուրքերի Արդահանի ջոկատը (18 հզ.), փորձելով շարժվել դեպի Թիֆլիս, նոյեմբ. 14-ին Ախալցիխայի մոտ ջախջախվեց գեն. Ի. Անդրոնիկովի ջոկատի կողմից: Նոյեմբ. 19-ին գեն. Բ. Բեհբութովի զորքերը (10—11 հզ.) ջարդեցին թուրք. գլխավոր ուժերը (36 հզ.) Բաշկադըքլարի ճակատամարտում (տես *Բաշկադըքլարի ճակատամարտ 1853*):

Ռուս. Սևծովյան նավատորմը շրջափակեց թուրք. նավերը նավահանգիստներում: Փոխծովակալ Պ. *Նախիմովի* նավախումբը նոյեմբ. 18-ին Սինոպում ոչնչացրեց թուրք. Սևծովյան նավատորմը (տես *Սինոպի ճակատամարտ 1853*): Թուրքիայի պարտությունը արագացրեց Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի պատերազմի մեջ մտնելը: 1854-ի փետր. 9-ին Ռուսաստանը պատերազմ հայտարարեց Մեծ Բրիտանիային և Ֆրանսիային: Մարտի 11-ին ռուս. զորքերն անցան Դանուբը և կենտրոնացան Հյուսիսային Դոբրուջայում: Ապրիլի 10-ին անգլո-ֆրանսիական նավախումբը ռմբակոծեց Օդեսան, հունիս—հուլիսին շրջափակեցին ռուս. նավատորմը Սևաստոպոլում:

Դանուբի ճակատում ռուս. զորքերը 1854-ի մայիսի 5-ին պաշարեցին Սիլիստրիա ամրոցը, բայց հաշվի առնելով ավստր. վտանգը՝ ետ քաշվեցին Դանուբից: Սեպտեմբերին ռուս. զորքերը նահանջեցին Պրուտ գետից: Ավստր. զորքերը զավթեցին Մոլդովան ու Վալախիան: Դաշնակիցների նավատորմը պաշարեց Ռուսաստանի ծովափերը (Բալթիկ և Սպիտակ ծովեր, Հեռավոր Արևելք): Սակայն անգլո-ֆրանսիական այդ նավախմբերի հարձակումները ետ մղվեցին: 1854-ի աշնանը դաշնակիցների զորքերը ափ ելան Ղրիմում:

Անդրկովկասում թուրք. բանակը, Մուստաֆա-Զարիֆ փաշայի գլխավորությամբ, համալրելով մինչև 120 հզ. զինվոր, 1854-ի մայիսին հարձակվեց գեն. Բեհբութովի 40 հզ-անոց ռուս. կորպուսի վրա: Հունիսի 4-ին գեն. Ի. Անդրոնիկովի 13 հզ-անոց զորքը Ճորոխ գետի մոտ ջարդեց Բաթումի թուրք. 34 հզ-անոց զորքը: Իսկ հուլիսի 17-ին ռուս. զորքերը (3,5 հզ. զինվոր) Չընգըլի լեռնանցքում ջախջախեցին թուրք. 20 հզ-անոց զորքը և գրավեցին Բայազետը: Բեհբութովի գլխավոր ուժերը (18 հզ.), որ զբաղված էին Արևելյան Վրաստան ներխուժած Շամիլի դեմ պատերազմելով, հարձակման անցան միայն հուլիսին: Միաժամանակ Ալեքսանդրապոլի վրա շարժվեցին թուրք. գլխավոր ուժերը (60 հզ. զինվոր): Հուլիսի 24-ին Քյուրուկ-

# ՂՐԻՄԻ ՊԱՏԵՐԱԶՄ 1853-1856 թթ.

220 0 220 կմ
















Պետությունների սահմանները առ 1853թ.

Բերդեր և ամրացված բնակավայրեր

Զորքերի տեղադրությունը և գործողությունները
ռուսական — կոալիցիայի

Զորքերի տեղափոխման հիմնական ուղղությունները
ռուսական — կոալիցիայի

Նավատորմների գործողությունները
ռուսական — կոալիցիայի

Ռուսների ականափակոցները

Ամրոցների պաշարումը
ռուսական զորքերի կողմից — կոալիցիայի զորքերի կողմից

Կարևորագույն մարտերի վայրերը

Ավստրիական. պրուսական և շվեդական բանակների կենտրոնացումը

Կովկասյան լեռնականների գործողությունների վայրերը ցարական զորքերի դեմ

Վրացա-աբխազական ջոկատների պարտիզանական գործողությունները թուրքական զորքերի դեմ

1856թ. Փարիզի պայմանագրով Ռուսաստանից անջատված տերիտորիա

Դարայի ճակատամարտում թուրք. բանակը ջախջախվեց և որպես ակտիվ ռազմունակ ուժ դադարեց գոյություն ունենալուց (տես *Քյուրուկ-Դարայի ճակատամարտ 1854*):

1854-ի սեպտ. 2-ին ափ ելնելով Եվպատորիայում՝ անգլո-ֆրանսիական-թուրքական բանակը հանդիպեց ռուս. զորքերի (33,6 հզ. զինվոր) դիմադրությանը: Սակայն Ալմա գետի վրա ռուսները պարտվեցին և նահանջեցին Սևաստոպոլ, այնտեղից էլ՝ Բախչիսարայ՝ Սևաստոպոլը թողնելով ճակատագրի հույսին: 18 հզ. ռուս. ծովայիններ և զինվորներ փոխծովակալներ Վ. Կոռնիլովի և Պ. Նախիմովի գլխավորությամբ կազմակերպեցին քաղաքի հերոսական պաշտպանությունը (տես *Սևաստոպոլի պաշտպանություն 1854—1855*):

1855-ի հունվարին պատերազմի մեջ մտավ Սարդինիան, որը Ղրիմ ուղարկեց 15 հզ-անոց կորպուս: Եվպատորիայում կենտրոնացավ Օմեր փաշայի 35 հզ-անոց թուրք. կորպուսը: Թշնամու ուշադրությունը Սևաստոպոլից շեղելու ռուս. հրամանատարության փորձերը [Բալակլավայի (1854-ի հոկտ. 13), Ինկերմանի (հոկտ. 24), Չյորնայա գետի (1855-ի օգոստ. 4) ճակատամարտերը] հաջողություն չունեցան: Թշնամու տեխ. և թվական գերակշռությունը, ռազմամթերքի պակասությունը, գլխավոր հրամանատարների (Ա. Մենշիկով, Մ. Գորչակով) ապաշնորհությունը, ղեկավարության անկարգությունները նն հանգեցրին Սևաստոպոլի անկմանը (1855-ի օգոստոս):

Անդրկովկասում գեն. Ն. Մուրավյովի կորպուսը (մոտ 40 հզ.) 1855-ի գարնանը ետ մղեց Բայազետի և Արդահանի թուրք. կորպուսները դեպի Էրզրում և պաշարեց Կարսի 33 հզ-անոց կայազորը: Կարսը փրկելու համար դաշնակիցները Սուխումում ափ հանեցին Օմեր փաշայի թուրք. 45 հզ-անոց կորպուսը, որը Ինգուրի գետի վրա հոկտ. 23—25-ին հանդիպելով գեն. Ի. Բագրատիոն-Մուխրանսկու ռուս. ջոկատի ուժեղ դիմադրությանը, կանգնեցվեց Ցխենիսծղալի գետի վրա: Թուրք. թիկունքում ծավալվեց վրացիների և աբխազների պարտիզանական շարժում: Նոյեմբ. 16-ին Կարսի կայազորը հանձնվեց:

1855-ի վերջին ռազմ. գործողությունները փաստորեն դադարեցին: 1856-ի մարտի 18-ին Փարիզում ստորագրվեց հաշտության պայմանագիր (տես *Փարիզի հաշտության պայմանագիր 1856*), համաձայն որի Ռուսաստանին արգելվում էր ռազմ. նավատորմ և ռազմ. բազաներ ունենալ Սև ծովում, Ռուսաստանը Թուրքիային էր զիջում Բեսարաբիայի հվ. մասը, պարտավորվում էր ամրություններ չկառուցել Ալանդյան կղզիներում և ճանաչել մեծ տերությունների հովանավորությունը Մոլդովայի, Վալախիայի և Սերբիայի վրա: Ռուսաստանը Թուրքիային էր վերադարձնում Անդրկովկասում գրաված բոլոր տարածքները (այդ թվում և Կարսը): Ղ. պ. երկկողմանի անարդարացի զավթողական պատերազմ էր: «Ղրիմի պատերազմը ցույց տվեց ճորտատիրական Ռուսաստանի փտածությունն ու անզորությունը» (Վ. Ի. Լ ե ն ի ն, Երկ., հ. 17, էջ 132): Ցարիզմի պարտությունը խախտեց նրա միջազգային և ներքին հեղինակությունը, արագացրեց Ռուսաստանում 1859—61-ի հեղափոխական իրադրությունը և ճորտատիրական իրավունքի վերացումը:

Ինչպես XVIII դ. վերջի և XIX դ. սկզբի ռուս-թուրքական պատերազմների ժամանակ, այնպես էլ Ղ. պ-ում, հայերը իրենց ազատագրության հույսը կապելով ռուս. զենքի հաղթանակի հետ, ռազմ. և նյութական մեծ օգնություն ցույց տվեցին ռուս. զորամասերին Ղրիմի և Կովկասյան ռազմաճակատներում: Պատերազմում Կովկասյան կորպուսի հրամանատարն էր Բ. Բեհբութովը, Սև ծովի Կովկասյան ափերը պաշտպանելու, թուրք. նավատորմի և դեսանտային ուժերի դեմ պայքարի գործում Պ. Նախիմովի հետ աչքի ընկավ հայազգի փոխծովակալ Լ. *Սերեբրյակովը*: Ռազմ. գործողությունների հենց սկզբին Հայաստանի մի շարք վայրերում (Երևան, Ալեքսանդրապոլ, Նախիջևան, Վաղարշապատ, Կարս, Իգդիր, Ղարաքաղ, Փամբակ—Շորագյալ և այլուր) կազմակերպվեցին հետևակային և հեծյալ կամավորական ջոկատներ, որոնք ռուս. զորքերի հետ միասին գործուն մասնակցություն ունեցան թշնամու դեմ մղված մարտերին: 1853-ին Վաղարշապատում Գևորգ Մալինցյանի և Ստեփան Սամսոնյանի ղեկավարությամբ կազմավորվեց 300 հոգուց բաղկացած կամավորական ջոկատ: 1853—1854-ին Շիրակի և Փամբակ—Շորագյալի գյուղացիները կազմեցին դրուժիններ, որոնք պահպանում էին սահմանները, կռվում հակառակորդի դեմ: Հայ կամավորական ջոկատները մասնակցեցին Բաշկադըքլարի ճակատամարտին: 1854-ի հունիսին, երբ թուրք. 200 հոգուց բաղկացած հեծելազորը հարձակվեց Բայանդուր գյուղի վրա, Շիրակի հայ կամավորները, մինչև ռուս. զորքերի օգնության հասնելը, Ի. Թարխանյանի ղեկավարությամբ 10 ժամ հերոսաբար մարտնչեցին թշնամու գերակշռող ուժերի դեմ: Հայ-վրացական հետևակային և հեծյալ ջոկատներն աչքի ընկան Ախալցխայի մոտ տեղի ունեցած մարտերում: Երևանի նահանգի բնակիչներից ձևավորվեց 500 հոգուց կազմված կամավորական մի գունդ: 1854-ի մայիսին Ավետիս Տեր-Գրեկուրովի նախաձեռնությամբ Նախիջևանում կազմվեց 125 հոգուց բաղկացած հեծյալ ջոկատ: Երևանի, Վաղարշապատի, Նախիջևանի, Շարուր-Դարալագյազի և Օրդուբադի կամավորական ջոկատները պահպանեցին սահմանները, կազմակերպեցին ռազմամթերքի ու սննդամթերքի փոխադրումը, ինչպես նաև մասնակցեցին թշնամու դեմ մարտերին: Կամավորները արիության և քաջության օրինակներ ցույց տվեցին Քյուրուկ-Դարայի ճակատամարտում (1854): Կարսի պաշարման ժամանակ, ինչպես տեղի հայերը, այնպես էլ հայ կամավորները ամեն ջանք գործադրեցին քաղաքի ազատագրման համար: Գեն. Ն. Մուրավյովը վկայում է Կարսի գրավման ժամանակ երիտասարդ գնդապետ Մ. *Լոռիս-Մելիքովի* ջոկատի քաջագործությունների մասին: Ռազմաճակատում իր սխրանքներով հայտնի էր դարձել կամավոր Դանիել Հարությունովը, որին կոչում էին «քաջ Դանիել»: Հայ կամավորները Թումանյանի գլխավորությամբ հարձակվեցին թուրք. զորակայանի վրա և գերեցին Ալի փաշային:

Ծովանկարիչ Հ. Այվազովսկին ստեղծել է Սևաստոպոլի հերոսամարտին նվիրված կտավներ («Սինոպի ծովամարտ», 1853, «Ծովամարտ», 1855), պաշարված քաղաքում բացել ցուցահանդես (1854), ոգևորել ու օգնել նրա պաշտպաններին:

Ղ. պ-ում հայերի դերը բարձր են գնահատել ռուս զորավարները, ականատեսները (Ն. Մուրավյով, Մ. Բոգդանովիչ, Մ. Լիխուտին, Ֆ. Գեյրոտ և ուրիշներ):

*Գրկ.* Պ ո ղ ո ս յ ա ն Ա. Մ., Ղրիմի պատերազմի Կովկասյան ռազմաճակատը և հայերի մասնակցությունը, Ե., 1958: Б о г д а н о в и ч М. И., Восточная война 1853—1856 гг., т. 1—4, СПБ, 1876; Т а р л е Е. В., Крымская война, т. 1—2, 2 изд., М., 1950.

*Վ. Պարսամյան*

**ՂՐԻՄԻ ՕՊԵՐԱՑԻԱ 1944**, սովետական զորքերի (4-րդ Ուկրաինական ռազմաճակատ, Մերձծովյան առանձին բանակ, Սևծովյան նավատորմ, Ազովի ռազմական նավատորմիկ) հարձակողական գործողությունները 1941—45-ի Հայրենական մեծ պատերազմի ժամանակ, ապրիլի 8-ից մայիսի 12-ը՝ Ղրիմը գերմանա-ֆաշիստական զորքերից ազատագրելու նպատակով: Դեռևս 1943-ի հոկտեմբեր—նոյեմբերին սովետական զորքերը ճեղքեցին Տուրեցկի վալի ամրությունները Պերեկոպի պարանոցում և հենակետեր գրավեցին Սիվաշի հվ. ափին և Կերչի թերակղզում: Սովետական հրամանատարությունը նախատեսում էր Սիմֆերոպոլ—Սևաստոպոլ ընդհանուր ուղղությամբ հզոր հարվածներ հասցնել և շրջապատել ու ոչնչացնել թշնամու խմբավորումը՝ թույլ չտալով նրան էվակուացվել Ղրիմից: Օպերացիային մասնակցում էր 470 հզ. մարդ, 5982 հրանոթ ու ականանետ, 559 տանկ և ինքնագնաց հրետանային սարքավորում, 1250 ինքնաթիռ:

Հարձակումը սկսեցին 4-րդ Ուկր. ռազմաճակատի զորքերը (հրամ. բանակի գեն. Ֆ. Տոլբուխին) ապրիլի 8-ին և նույն օրը, ճեղքելով թշնամու ամրությունները, գրավեցին Արմյանսկը: Ապրիլի 11-ի գիշերը հարձակման անցան Մերձծովյան առանձին բանակի զորքերը և 4-րդ օդային բանակի ու Սևծովյան նավատորմի ավիացիայի աջակցությամբ ազատագրեցին Կերչը: Զարգացնելով հարձակումը սովետական զորքերը ապրիլի 15—16-ին դուրս եկան Սևաստոպոլ, մայիսի 5-ին սկսեցին նրա գրոհը և մայիսի 9-ին ազատագրեցին քաղաքը: Մայիսի 12-ին թշնամու մնացած զորքերը անձնատուր եղան Խերսոնես հրվանդանում: Ֆաշիստական խմբավորման ջախջախմանը մեծապես նպաստեցին Ղրիմի պարտիզանները: Ղ. օ. ավարտվեց գերմ. 17-րդ բանակի լիակատար ջախջախմամբ (թշնամու կորուստները կազմեցին 140 հզ. մարդ), վերացավ սովետական ճակատի հվ. թևին սպառնացող վտանգը, բարելավվեց Սևծովյան նավատորմի բազավորումը:

Ղրիմի ազատագրմանը մասնակցեց 89-րդ հայկ. Թամանյան դիվիզիան, որն աչքի ընկավ նախ Կերչի հենակետում, ապա քաղաքի ազատագրման մարտերում,

Սևաստոպոլի գրոհի և հատկապես Գորնայա բարձունքի գրավման ժամանակ: Դիվիզիան պարգևատրվեց Կարմիր աստղի շքանշանով, իսկ նրա 390-րդ և 400-րդ գնդերը արժանացան Սևաստոպոլյան անվանմանը: Պերեկոպի պարանոցի ճեղքմանը մասնակցեց գնդ.-մայոր Ա. Կարապետյանի ղեկավարած դիվիզիան: Էլտիգենում դեսանտ էր իջել 137-րդ գունդը՝ փոխգնդապետ Գ. Բուլբուլյանի գլխավորությամբ: Օպերացիայի հաջողությանը մեծապես նպաստեց Ն. Ստեփանյանի գրոհային ավիացիոն գունդը: Ղ. օ-ում, ի թիվս 126 մարդու, Սովետական Միության հերոսի կոչման արժանացան Ս. Բաղդասարյանը, Խ. Խաչատրյանը, Ա. Հարությունյանը, Հ. Մկրտչյանը, Վ. Ռոստոմյանը, Ա. Բաբայանը, Հ. Չաքրյանը: 89-րդ հրաձգային դիվիզիայի զոհված մարտիկների հիշատակին Գորնայա բարձունքի լանջին կանգնեցված է հուշարձան:

*Գրկ.* Հայ ժողովրդի պատմություն, հ. 8, գլուխ 3, Ե., 1975: Великая Отечественная война Советского Союза. 1941—1945. Краткая история, 2 изд., М., 1970, с. 336—39.

*Վ. Ղազախեցյան*

**ՂՐՂԻ** (1978-ից՝ Արծվաբերդ), գյուղ Հայկական ՍՍՀ Շամշադինի շրջանում, շրջկենտրոնից 17 *կմ* հարավ-արևելք: Կոլտնտեսությունն զբաղվում է ծխախոտագործությամբ, այգեգործությամբ, անասնապահությամբ: Ունի միջնակարգ և


Արծվաբերդ (Ղրղի)

ութամյա դպրոցներ, կուլտուրայի տուն, 2 գրադարան, կապի բաժանմունք, հեռախոսակայան, մանկապարտեզ, հիվանդանոց (50 մահճակալով): Գյուղում և շրջակայքում պահպանվել են ամրոցներ, գյուղատեղիներ, եկեղեցիներ (միջնադար), Մուսմալայի և Սեպրին կիկլոպյան ամրոցները, որոնք Նորաշեն և Նավուռս ամրոցների հետ նույն պաշտպանական համակարգի մասն են կազմում: Մուսմալար ամրոցին մոտ է «Խուրջին-հողեր» կոչվող ուշ բրոնզեդարյան դամբարանադաշտը (պեղել է Ս. Ա. Եսայանը 1963—65-ին): Ղ-ի մոտ պեղվել են նաև միջին բրոնզեդարյան (հանվել է հիմնականում սև և կենդանակերպ ու երկրաչափական պատկերներով, կարմիր գունազարդ խեցեղեն), ինչպես և վաղ երկաթեդարյան դամբարաններ: Ղ-ի շուրջ սփռված են նաև Ղամշկուտ, Քարի ձոր, Դարանց, Կռապաշտի յալ դամբարանադաշտերը:

**ՂՈՒԲԱ**, քաղաք, Ադրբեջանական ՍՍՀ համանուն վարչական շրջանի կենտրոնը: Գտնվում է Մեծ Կովկասի հս-արլ. նախալեռներում, Կուդիալչայ գետի աջ ափին: Ավտոճանապարհների հանգույց է: 19 հզ. բն. (1970): Այգեգործական շրջանի կենտրոն է: Կան պտղի-բանջարեղենի պահածոների, միկրոէլեկտրաշարժիչների գործարաններ, ՀԷԿ, պտղաբուծության, խաղողագործության և մերձարևադարձային կուլտուրաների ԳՀԻ, սովխոզտեխնիկում, բժշկ. ուսումնարան, հայրենագիտական թանգարան, դրամատիկական թատրոն: Ղ. գորգագործության հնագույն կենտրոն է: Հիմնադրվել է XV դ.:

**ՂՈՒԲԱՅԻ ԽԱՆՈՒԹՅՈՒՆ**, ֆեոդալական պետական կազմավորում Ադրբեջանի հյուսիս-արևելքում: Ստեղծվել է XVIII դ. 2-րդ կեսին, կենտրոնն էր Ղուբա (Կուբա) քաղաքը: 1758—89-ին իշխել է *Ֆաթալի խանը* (1736—89), որը խանության շուրջն է միավորել Ադրբեջանի մերձկասպյան բոլոր հողերը՝ մինչև Արդաբիլ քաղաքը: 1787-ին վրաց Հերակլ II թագավորի հետ դաշինք է կնքել ընդդեմ Իրանի: 1775, 1783 և 1787-ին Ղ. խ-յան դեսպանները դիմել են ռուս. կառավարությանը՝ խնդրելով նրա հովանավորությունը: 1790-ական թթ. սկզբին Ղ. խ. մասնատվել է, իսկ 1806-ին միացել Ռուսաստանին, որը վավերացվել է 1813-ի Գյուլիստանի հաշտության պայմանագրով:

*Գրկ.* Абдуллаев Г. Б., Из истории северо-восточного Азербайджана в 60—80 гг. XVIII в., Баку, 1958.

**ՂՈՒՁԵԼ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Վանի վիլայեթի Ալջևազի գավառում, Վանա լճից արևմուտք, Սիփան լեռան մոտ: 1909-ին ուներ 120 (20 ընտանիք) հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Ղ-ի հայերը 1915-ի հուլիսին, ռուս. զորքերի հետ գաղթել և բնակություն են հաստատել Արևելյան Հայաստանում:

**ՂՈՒԼ ԱՐԶՈՒՆԻ** (մոտ 1650, հավանաբար՝ Նոր Ջուղա —1750), հայ աշուղ, *Ղուլ Էգազի* ժամանակակիցը և հետևորդը: Սովորել է Նոր Ջուղայում: Երկար ժամանակ ապրել է Կալկաթայում: Ղ. Ա-ի մասին տեղեկություններ և նրա հատուկենտ երգերը հրապարակվել են սկսած 1823-ից: Գրականագետ-արվեստաբան Ա. Երեմյանը «Պարսկահայ աշուղներ» (1930) գրքում զետեղել է նրա 8 երգը, Գ. Թարվերդյանը «Հայ աշուղներ» (1937) ժողովածուում՝ բանավոր պահպանված մինչ այդ անտիպ մեկ երգը: Գրականագետ Հ. Սահակյանը «Հայ աշուղներ» (1961) գրքում ամփոփել է աշուղի մասին տեղեկություններն ու մատենագրությունը և վերահրատարակել նրա հայտնի 9 երգից 7-ը: Ղ. Ա-ի երգերի մեղեդիները մեզ չեն հասել:

*Մ. Մանուկյան*

**ՂՈՒԼ ԷԳԱԶ** (մոտ 1650—1734, Նոր Ջուղա), հայ աշուղ, պարսկահայ աշուղական դպրոցի ավագ ներկայացուցիչը: Նրա դավթարը հայտնաբերված չէ, սակայն 1823-ից սկսած հանդեսներում և բանասիրական աշխատություններում հրատարակվել են նրա հատուկենտ երգերը և կենսագրական տեղեկություններ: Գրականագետ-արվեստաբան Ա. Երեմյանը «Պարսկահայ աշուղներ» (1930) գրքում զետեղել է աշուղի բանավոր փոխանցմամբ պահպանված 6 երգի տեքստերը: Գրականագետ Հ. Սահակյանը «Հայ աշուղներ» (1961) գրքում ամփոփել է Ղ. Է-ի մասին տեղեկություններն ու մատենագրությունը և վերահրատարակել նրա երգերը՝ ավելացնելով իր հայտնաբերած (Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանի № 5954 ձեռագրում) երեք ու Գ. Թարվերդյանի հայտնաբերած մեկ երգը: Ղ. Է-ի երգերի մեղեդիները մեզ չեն հասել:

*Մ. Մանուկյան*

**ՂՈՒԼԱԼԻՍ**, հայաբնակ գյուղ Վրացական ՍՍՀ Բոգդանովկայի շրջանում, շրջկենտրոնից 12 *կմ* հյուսիս-արևմուտք: Միավորված է Գոնդուրայի սովետական տնտեսության հետ: Ունի ութամյա դպրոց, գրադարան, ակումբ: Գյուղում պահպանվել է եկեղեցի: Հայերը եկել են Ծալկայի շրջանից:

**ՂՈՒԼԱԼԻՍ**, հայաբնակ գյուղ Վրացական ՍՍՀ Ախալցխայի շրջանում, շրջկենտրոնից 6 *կմ* հարավ-արևմուտք: Միավորված է Փոքր Պամաձիի սովետական տնտեսության հետ: Ունի տարրական դպրոց, գրադարան և ակումբ: Ղ-ի հայերը գաղթել են 1830-ին, Արևմտյան Հայաստանի Էրզրումի նահանգից: Գյուղի շրջակայքում կան ամրոցի ավերակներ:

**ՂՈՒԼԱՄ ՂԱՖՈՒՐ** [իսկական անուն-ազգանունը՝ Ղաֆուր Ղուլամովիչ Ղուլամով (1903, Տաշքենդ —1966, Տաշքենդ)], ուզբեկ սովետական գրող: Ուզբեկ. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1943), Ուզբեկ. ՍՍՀ ժող. բանաստեղծ (1963): ՍՄԿԿ անդամ 1946-ից:


Ղ. Ղուլամ

Ուզբեկ. նոր տաղաչափության հիմնադիրներից: «Կուկան-բատրակ» (1930) պոեմում, «Դինամո» (1931), «Հումորիստական պատմվածքներ» (1931) ժողովածուներում քննադատել է անցյալի արատավոր կողմերը: Գրել է հակաֆաշիստական բանաստեղծություններ («Ես հրեա եմ», «Դու որբ չես» ևն), որոնք ամփոփվել են «Արևելքից եմ գալիս» (1943, ՍՍՄ պետ. մրցանակ, 1946) ժողովածուում: Ղ. Ղ. երգել է սովետական երկրի կյանքը («Ամեն ինչ քոնն է», 1947, «Հայրենի երկրի երջանկությունը», 1951, «Տոն Ցանգի-Երեւում», 1957, «Լենինը և Արևելքը», 1961 ևն): Ուզբեկերեն է թարգմանել համաշխարհային դասականների ստեղծագործություններից: Լենինյան մրցանակի դափնեկիր (1970, ետմահու): Պարգևատրվել է Լենինի 3 շքանշանով:

*Երկ.* Բանաստեղծություններ, Ե., 1961: Չարաճճին, Ե., 1973:

**ՂՈՒԼԹԻԿ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի համանուն գավառի Տատիկի գավառակում: 1909-ին ուներ 1779 (334 ընտանիք) հայ բնակիչ: Ղ. Բիթլիսի գավառի ամենամեծ գյուղն էր: Աչքի էր ընկնում գեղեցիկ դիրքով, ջրերի առատությամբ և բերքառատ հողերով: Բնակիչները զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ ու

արհեստներով (մետաղագործություն, բրուտագործություն): Գյուղում կար եկեղեցի: Ղ. հայտնի էր նաև իր ավերակ եկեղեցիներով, վանքերով ու սրբավայրերով: Գործում էր երկսեռ դպրոց: Ղ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին:

**ՂՈՒԻԿՅԱՆ** Վարազդատ Մակարի [ծն. 10.1.1921, գ. Ղզլքիլիսա (ՎՍՍՀ Ծալկայի շրջանում)], Փառքի 3 աստիճանների ասպետ (8.6.1944, 16.3.1945, 15.5.1946), ավագ սերժանտ: ՍՄԿԿ անդամ 1943-ից: Հայրենական մեծ պատերազմին մասնակցել է 1942-ից՝ 89-րդ հայկ. Թամանյան դիվիզիայի կազմում, որպես սակրավորների ջոկի հրամանատար: Փառքի շքանշաններին արժանացել է Մալգոբեկի համար մարտերում ականապատված դաշտերը վնասազերծելու, Օդերն առաջիններից անցնելու և դիվիզիայի գետանցն ապահովելու, Բեռլինի Հումբոլդտյան պարկի ամրոցի պատնեշը պայթեցնելու համար: 1946-ին զորացրվել է, աշխատանքի անցել հայրենի գյուղի, ապա Ղուշչիի սովետական տնտեսությունում:

**ՂՈՒԼՅԱՆ** Էդուարդ Խաչատուրի [ծն. 7.1. 1927, գ. Ղարաչինար (Ադրբ. ՍՍՀ Շահումյանի շրջանում)], սովետական պետական աշխատող: Երկրաբանա-հանքաբանական գիտ. թեկնածու (1966), ՀՍՍՀ վաստակավոր երկրաբան (1965): ՍՄԿԿ անդամ 1955-ից: Ավարտել է Երևանի համալսարանի երկրաբանական ֆակուլտետը (1949): 1949-ից աշխատել է ՀՍՍՀ երկրաբանական վարչության արշավախմբերում (երկրաբան, գլխ. երկրաբան, գլխ. ինժեներ), 1955-ից՝ երկրաբանական վարչությունում, 1965-ից վարչության պետն է, 1968-ից՝ Հայկ. երկրաբանական ընկերության փոխնախագահ: Հեղինակ է մի շարք տեսական և գործնական նշանակություն ունեցող գիտական աշխատությունների, որոնցում լուսաբանված են ՀՍՍՀ օգտակար հանածոների տարածական տեղաբաշխման օրինաչափությունները ու հեռանկարները:

*Երկ.* Железнорудные месторождения Армении, Е., 1963 (соавтор Г. А. Дадаян); Развитие минерально-сырьевой базы Арм. ССР к 50-летию Великого Октября, РОН, 1967.

**ՂՈՒԼՈՅԱՆ** Լիպարիտ Տիգրանի [ծն. 19.2. 1913, գ. Ելենովկա (այժմ՝ ք. Սևան)], հայ սովետական ջերմաէներգետիկ: Տեխ. գիտ. դ-ր (1976), պրոֆեսոր (1976): ՍՄԿԿ անդամ 1955-ից: Ավարտել է Մոսկվայի Բաումանի անվ. բարձրագույն տեխ. ուսումնարանը (1941): 1954—72-ին ղեկավարել է Երևանի պոլիտեխնիկական ինստ-ի մի շարք ամբիոններ: Միաժամանակ 1962—70-ին գլխավորել է ջերմաէներգետիկայի Հայկ. ՍՍՀ-ում առաջին գիտահետազոտական լաբորատորիան: 1972—1977-ին եղել է պոլիտեխնիկական ինստ-ի էներգետիկական ֆակուլտետի դեկան: 1977-ից նույն ինստ-ի ջերմային էլեկտրակայանների և արդյունաբերական ջերմաէներգետիկայի ամբիոնի վարիչն է: Զբաղվել է մոխրառատ վառելիքի այրման և տեղական վատորակ վառելիքի օգտագործման հարցերով, մշակել վառելիքաէներգետիկական ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը գնահատող մեթոդ, ուսումնասիրել բնակլիմայական, տնտ. և այլ գործոնների դերը ջերմա- և ջերմացրտամատակարարման սխեմաների և համակարգերի ընտրության գործում:

*Երկ.* Ընդհանուր ջերմատեխնիկա, մաս 1—2, Ե., 1976—78 (համահեղինակ՝ Մ. Բ. Բուբուշյան): Тепло- и холодоснабжение в условиях теплого климата, Е., 1973.

*Հ. Հովնանյան*

**ՂՈՒԿԱՍ Ա ԿԱՐՆԵՑԻ** (1722—1799), Հայոց կաթողիկոս 1780-ից: 1782-ին դիմել է ռուս. հրամանատարությանը հայ ժողովրդին պարսկ. լծից ազատագրելու խնդրանքով: 1786-ին Հովնաթան Հովնաթանյանին նկարազարդել է տվել Էջմիածնի Մայր տաճարը: 1797-ին Ղ. Ա Կ. խնդրել է ռուս. կայսր Պավել I-ին՝ իր հովանավորության տակ վերցնել հայ ժողովրդին և ճանաչել Էջմիածնի հոգևոր իշխանությունը Ռուսաստանի հայերի նկատմամբ (այդ խնդրանքը բավարարվել է 1798-ի փետրվ. 26-ի կայսերական հրովարտակով):

**ՂՈՒԿԱՍ ԼՈՌԵՑԻ**, Ղ ո ւ կ ա ս Հ ա խ պ ա տ ե ց ի [ծն. թ. անհտ., Հաղպատ— 1561, գ. Սոթ (Սյունիքի Ծար գավառում)], հայ մատենագիր, մանկավարժ, գրիչ: 1513—1543-ին դասավանդել է Վաղարշապատի և Սանահինի դպրոցներում, ապա՝ Ծար գավառում, հռչակվել իբրև «մեծ րաբունապետ», «մեծ վարդապետ»:

Ընդօրինակել է քերականական մի ձեռնարկ, գրել սաղմոսների մեկնություններ, դավանաբանական երկ և «Քարոզգիրք»: Վերջինս (հեղինակային ինքնագիրը պահվում է Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանում, ձեռ. № 4355) բաղկացած է 40 քարոզից՝ միահյուսված ժող. զրույցներով, առակներով, ասացվածքներով, խրատներով: Շոշափում է սոցիալական, ազգագրական, կենցաղային և այլ բնույթի հարցեր: Գրված է միջին հայերենով և կարևոր սկզբնաղբյուր է միջնադարում աշխարհաբար լեզվի գործածման, ժող. բառ ու բանի ուսումնասիրման համար:

*Գրկ.* Հ ա ր ո ւ թ յ ո ւ ն յ ա ն Է., Ղուկաս Լոռեցին և նրա քարոզգիրքը, «ԲՄ», 1971, № 10:

*Է. Հարությունյան*

**ՂՈՒԿԱՍ ՎԱՆԱՆԴԵՑԻ**, Ղ ո ւ կ ա ս Ն ո ւ ր ի ջ ա ն յ ա ն (ծն. մոտ 1650-ական թթ. սկզբներին — մահ. թ. անհտ.), XVII դ. երկրորդ կեսի և XVIII դ. առաջին քառորդի հայ մատենագիր, թարգմանիչ, փիլիսոփա, գրահրատարակիչ, մշակութային գործիչ, դպիր: Ծնվել է Հայաստանի Գողթըն գավառի (այժմ՝ Նախիջևանի ԻՍՍՀ-ում) Վանանդ գյուղում: Նախնական կրթությունն ստացել է տեղում, ապա 1679—82-ին ուսումը շարունակել է Հռոմի Ուրբանյան վարժարանում: 1690-ին Ամստերդամում միացել է իր ազգական տպագրիչ *Մատթեոս Վանանդեցուն* և գործուն մասնակցություն բերել հայկական տպարանի աշխատանքին: 1706-ին տպարանի տնօրեն Թովմաս Վանանդեցու հետ մեկնել է Անգլիա նյութական միջոցներ հայթայթելու: 1707-ին Օքսֆորդի համալսարանում ստացել է արվեստի մագիստրոսի գիտական աստիճան: Թովմասի մահից (1708) հետո եղել է Ամստերդամի տպարանի տնօրենը (մինչև փակվելը՝ 1717-ը): Կատարելով խմբագրական, գրաշարական, սրբագրական աշխատանքներ՝ լույս է ընծայել գրքեր, այդ թվում՝ «Համառօտ քերականութիւն» (1711), Շարակնոց (1712), Սաղմոսարան (1713, 1714), Պարզատումար (1714), «Կարճառօտ ժամագիրք» (1717): Ղ. Վ. հեղինակ է փիլ., կրոնական, աշխարհագրական, վաճառականական երկերի, դասագրքերի: Դրանց մի մասը տպագրվել է Ամստերդամի հայկ. տպարանում: Տպագրվել են «Բանալի համատարածի աշխարհացոյցին մերոյ նորաձնի» (1696), որ հայկական առաջին տպագիր քարտեզի՝ «Համատարած աշխարհացոյց»-ի ուսումնական ուղեցույցն է, «Համաձայնութիւն հնգետեսակ ամսոց...» (1698) տոմարագրական աշխատությունը, «Գանձ. Չափոյ՝ Կշռոյ՝ Թուոյ՝ և Դրամից բոլոր աշխարհի» (1699), որ երրորդ աշխարհաբար գիրքն է, նախատեսված վաճառականների համար, «Դուռն իմաստութեան» կամ «Ոսկեայ դուռն դպրատան» (1699), դասագիրք է, «Բնաբանութիւն իմաստասիրական կամ Տարերաբանութիւն» (1702) փիլ., բնագիտական, օդերևութաբանական երկը (այս երկուսի հեղինակակիցն է Մատթեոս Վանանդեցին), «Համբոյր սրբութեան» (1704) են: Նրա թարգմանական գործերից է «Յօգնադիմի աստուածաբանական բարոյական և քաղաքական իրողութեանց սահմանք» ժողովածուն (1704): Ղ. Վ. գրել է նաև բանաստեղծություններ, որոնց մի մասը տեղ է գտել ամստերդամյան հրատարակություններում:

Ղ. Վ-ու մոտ հայերեն է սովորել գերմանացի ականավոր արևելագետ Յոհան Շրյոդերը, որը իր հայագիտական (լատիներեն) նշանավոր երկը՝ «Արամեան լեզուին գանձ»-ը, գրել և հրատարակել է Ղ. Վ-ու օգնությամբ: Ղ. Վ-ու բարեկամն է եղել և նրան այցելել է գերմանացի մեծ մտածող Գ. Լայբնիցը: Հետևելով հին հույն փիլիսոփաներին, Ղ. Վ. ընդունում էր, որ մեզ շրջապատող առարկաները չորս տարրերի՝ հողի, ջրի, օդի և հրի տարբեր զուգակցություններ են: Ղ. Վ. պատրաստել է հայկ. աստղագիտական-գեոդեզիական գործիք՝ աստրոլաբ (պահպանվում է Բյուրականի աստղադիտարանում), որով որոշվում էին երկնային մարմինների կոորդինատները, համաստեղությունների դիրքը երկնոլորտում, Արեգակի դիրքը խավարածրի վրա, տեղի աշխարհագրական լայնությունը, օրվա ժամը, գիշերվա ու ցերեկվա տևողությունները, անմատչելի առարկաների բարձրությունն ու հեռավորությունը:

*Գրկ.* Զ ա ր բ հ ա ն ա լ յ ա ն Գ., Պատմութիւն հայկական տպագրության, Վնտ., 1895: Լ ե ո, Հայկական տպագրություն, հ. 1, Թ., 1904: Ս ա ր ու խ ա ն Ա., Հոլլանդան և հայերը ԺԶ—ԺԹ դարերում, Վնն., 1926: Թ ո ւ մ ա ն յ ա ն Բ., Հայկական նորահայտ աստղագիտական գործիք, Ե., 1958: Ն ո ւ յ ն ի, Հայ աստղագիտության պատմություն, հ. 1, Ե., 1964: Գ ր ի գ ո ր յ ա ն Մ., Նոր նյութեր և դիտողություններ հրատարակիչ Վանանդեցվոց մասին, Վնն., 1969:

*Ռ. Իշխանյան, Բ. Թումանյան*

**ՂՈՒԿԱՍԱՎԱՆ** (մինչև 1956-ը՝ Ք ա լ ա ր ա), գյուղ Հայկական ՍՍՀ Մասիսի


Ա. Գ. Ղուկասյան


Հ. Ա. Ղուկասյան

շրջանում, Հրազդանի ձախ ափին, շրջկենտրոնից 6 *կմ* հյուսիս-արևմուտք: Բանջարաբուծական-սերմնաբուծական (փորձարարական տնտեսություն) սովետական տնտեսությունն զբաղվում է նաև անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կապի բաժանմունք, կինո, մանկապարտեզ, բուժկայան:

**ՂՈՒԿԱՍՅԱՆ** Արամ Գրիգորի (14.8.1901, Թիֆլիս—27.9.1972, Մոսկվա), հայ սովետական թերապևտ: Բժշկ. գիտ. դ-ր (1938), պրոֆեսոր (1938), ՌՍՖՍՀ գիտ. վաստ. գործիչ (1961), ՍՍՀՄ ԲԳԱ թղթ. անդամ (1965): ՍՄԿԿ անդամ 1918-ից: 1926-ին ավարտել է Մոսկվայի համալսարանի բժշկ. ֆակուլտետը, այնուհետև՝ Կարմիր պրոֆեսուրայի, փիլիսոփայության և բնագիտության ինստ-ը: Բժշկ. գործունեության հետ միաժամանակ ղեկավարել է Մոսկվայի կինեմատոգրաֆիայի ինստ-ի դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի ամբիոնը: 1938-ից՝ Մոսկվայի I բժշկ. ինստ-ի սանիտարա-հիգիենային ֆակուլտետի ֆակուլտետային թերապիայի ամբիոնի վարիչ: Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: 1947-ից եղել է ՍՍՀՄ առողջապահության մինիստրության բժշկ. ուս. հաստատությունների գլխավոր վարչության պետ, կոլեգիայի անդամ, իսկ 1961—68-ին՝ 4-րդ գլխավոր վարչության գլխավոր թերապևտ: 1963—1972-ին ղեկավարել է Մոսկվայի I բժշկ. ինստ-ի բուժական ֆակուլտետի ֆակուլտետային թերապիայի ամբիոնը: 1964—1972-ին եղել է «Տերապևտիչեսկի արխիվ» («Терапевтический архив») ամսագրի գլխավոր խմբագիր: Ղ-ի գիտական աշխատությունները նվիրված են մարսողության օրգանների ախտաբանությանը. մշակել է գաստրոգեն սակավարյունությունների կլինիկական ընթացքը, հետազոտել է երիկամների, սիրտ-անոթային համակարգի ևն հիվանդությունները: Ղ. զբաղվել է նաև հայրենական թերապիայի պատմության հարցերով: Պարգևատրվել է Հոկտեմբերյան հեղափոխության, Աշխատանքային կարմիր դրոշի 2, Հայրենական պատերազմի I և II աստիճանի շքանշաններով:

*Երկ.* Болезни кишечника, М., 1964; Хронический алкоголизм и состояние внутренних органов, М., 1968; Эволюция отечественной терапевтической мысли, М., 1973.

**ՂՈՒԿԱՍՅԱՆ** Ջվարք Հովհաննեսի (15.10.1911, գ. Դալիբաբա, Էրզրումի նահանգի Բասեն գավառում—6.12.1980, Երևան), հայ սովետական գրականագետ, գրող: Բանասիրական գիտ. դ-ր (1971): ՍՄԿԿ անդամ 1938-ից: Եղել է ՀԿԿ Երևանի քաղկոմի քարտուղար (1951—53, 1954—55), ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչի տեղակալ (1956—58): 1958—80-ին աշխատել է ՀՍՍՀ ԳԱ Մ. Աբեղյանի անվ. գրականության ինստ-ում: Հրատարակել է «Պատմվածքներ» (1958), «Ոտնահետքերը ցանկապատի մոտ» (1974) ժողովածուները, «Ռուս-հայ գրական կապերը նախառևոլյուցիոն շրջանում» (1961), «Ժամանակակից սովետահայ վեպը (1953—1963)» (1964), «Գրականության կուսակցականության լենինյան ուսմունքը և հայ գրականագիտությունը» (1970) աշխատությունները: ՀՍՍՀ III—IV գումարումների Գերագույն սովետի դեպուտատ:

**ՂՈՒԿԱՍՅԱՆ** Հովհաննես Արամի (ծն. 29.12.1919, Թավրիզ), հայ սովետական գրող: Ավարտել է ծննդավայրի Հայոց կենտրոնական դպրոցը: 1946-ին փոխադրվել է Սովետական Հայաստան: 1944-ին Թավրիզում լույս են տեսել նրա «Առակներ և բանաստեղծություններ» գիրքը, «Հեքիաթներ և բալլադներ»-ը, «Բերդի հիշատակարան», «Ջոյա» պոեմները, այնուհետև՝ «Ռուբայիներ» (1945) և «Հայրենադարձ» (1947) բանաստեղծությունների ժողովածուները: Արձակ գործերից են «Վիպակներ» (1957), «Փոքրիկ վրիժառուներ» (1950), «Գարնանային պատմություն» (1955), «Անհանգիստ պատանեկություն» (1959) վիպակները, «Կարձատեսի արկածները» (1964) և «19 պատմվածք» (1966) ժողովածուները: Ղ. հայտնի է իր պատմավեպերով («Ոսկան Երևանցի», 1962, «Դեռ սպասում են», 1969, «Բոգդան Սալթանով», 1980): Գրել է «Սոնա» և «Մարմար» բալետների լիբրետոները: Ղ-ի ստեղծագործությունները թարգմանվել են շատ լեզուներով: Պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով:

*Երկ.* Երկ. ժող., հ. 1—3, Ե., 1972—76:

**ՂՈՒԿԱՍՅԱՆ** Ղուկաս Հովհաննեսի [20.5.1899, գ. Քալարա (Մասիսի շրջանի գ. Ղուկասավան)—14.5.1920, Արգինա (Կարսի մարզում)], հայ հեղափոխական, կուսակցական գործիչ: ՌՍԴԲ(բ)Կ անդամ 1917-ից: Սովորել է Երևանի տարրական և թեմական դպրոցներում: Հեղափոխական պայքարի մեջ ընդգրկվել է դպրոցական տարիներից: Ղ-ի մարքսիստական աշխարհայացքի ձևավորմանը մեծ չափով նպաստել է նրա շփումը պրոֆեսիոնալ հեղափոխական Ա. Մելիքյանի հետ: 1919-ի ապրիլին Ղ., մի քանի այլ երիտասարդ կոմունիստների հետ, ստեղծել է *«Սպարտակ»* կոմունիստական երիտասարդական կազմակերպությունը: Սեպտեմբերին մասնակցել է Բաքվում կայացած երիտասարդական կոմունիստական կազմակերպությունների անդրկովկասյան առաջին անլեգալ կոնֆերանսին, որտեղ ընտրվել է Անդրկովկասի կոմունիստական երիտասարդական միության ղեկավար կազմում: 1920-ի հունվարին Ղ. ընտրվել է Արմենկոմի կազմում: 1920-ի գարնանը կազմակերպական ու պրոպագանդիստական լայն գործունեություն է ծավալել Երևանում և Հայաստանի գավառներում: Մասնակցել է 1920-ի մայիսի 7-ին «Վարդան զորավար» զրահագնացքում տեղի ունեցած Արմենկոմի և մի շարք ապստամբ շրջանների ներկայացուցիչների նիստին: Նիստից հետո Արմենկոմի հանձնարարությամբ մեկնել է Կարս: Ընտրվել է Կարսի ռազմահեղափոխական կոմիտեի կազմում և ղեկավար մասնակցություն ունեցել Կարսի զինված ապստամբությանը: Զոհվել է դաշնակցական զորքերի դեմ մղված մարտերից մեկում:


Ղ. Հ. Ղուկասյան

Ղ-ի հուշարձանը կանգնեցված է Երևանի նույնանուն պուրակում:

Նրա անունով են կոչվում ՀՍՍՀ շրջաններից մեկը, նախկին Ղզլղոչ գյուղը, ծննդավայրը, Երևանի պիոներների պալատը, փողոցներ ու դպրոցներ Երևանում, Լենինականում և ՀՍՍՀ այլ բնակավայրերում:

*Հ. Օհանյան*

**ՂՈՒԿԱՍՅԱՆ**, լեռնագագաթ Եղնախաղի լեռնաշղթայի հարավում, Հայկական ՍՍՀ-ի և Թուրքիայի պետական սահմանի վրա: Բարձրությունը 3042 *մ* է: Կազմված է անդեզիտա-բազալտային լավաներից: Վերին անթրոպոգենում ենթարկվել է սառցապատման: Լանջերին տարածված են ալպյան մարգագետիններ:

**ՂՈՒԿԱՍՅԱՆ** (մինչև 1956-ը՝ Վ ե ր ի ն Ղ ու կ ա ս յ ա ն), գյուղ, Հայկական ՍՍՀ համանուն շրջանի վարչական կենտրոնը, Ախուրյան գետի ափերին: Ղ-ով է անցնում Երևան—Ախալքալաք ավտոխճուղին: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև հացահատիկի և կերային կուլտուրաների մշակությամբ:


Ղուկասյան

Գործում են միջնակարգ և երաժշտական դպրոցներ, պրոֆտեխնիկական ուսումնարան, կուլտուրայի տուն, ակումբ, գրադարան, կինոթատրոն, կապի բաժանմունք, հյուրանոց, կենցաղսպասարկման կոմբինատ, առևտրի և հասարակական սննդի օբյեկտներ, մսուր-մանկապարտեզ, հիվանդանոց (75 մահճակալով), դեղատուն, պոլիկլինիկա, սանիտարահակահամաճարակային կայան: Ղ-ում է ժողովրդական սպառման ապրանքների գործարանը: Ղ-ում պահպանվել է եկեղեցի և գերեզմանոց (XIX դ.):

**«ՂՈՒԿԱՍՅԱՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»**, պատմական և հասարակական-քաղաքական բովանդակությամբ գրքերի մատենաշար: Հրատարակվել է Թիֆլիսում, Բաքվի խոշոր նավթարդյունաբերող Ավետիս Ղուկասյանի կտակած գումարներով: 1904—1917-ին հաջորդաբար լույս են ընծայվել Եղիշեի, Ղազար Փարպեցու, Կիրակոս Գանձակեցու, Ստեփանոս Օրբելյանի, Հովհաննես Դրասխանակերտցու, Արիստակես Լաստիվերտցու, Սեբեոսի, Մովսես Կաղանկատվացու, Մովսես Խորենացու, Կորյունի, Եզնիկ Կողբացու, Ագաթանգեղոսի, Թովմա Արծրունու երկերը, ինչպես նաև Շ. Շահամիրյանի «Որոգայթ փառաց» և Ա. Ղլտճյանի «Կանոնագիրք հայոց» աշխատությունները: Բոլորը, բացի վերջինից, արտատպություններ են նախկին հրատարակություններից և նախատեսված են ընթերցող լայն շրջանների համար:

*Հ. Դավթյան*

**ՂՈՒԿԱՍՅԱՆԻ ՇՐՋԱՆ**, վարչական շրջան Հայկական ՍՍՀ հյուսիս-արևմտյան մասում: Հս-ում սահմանակից է Վրացական ՍՍՀ-ին: Կազմվել է 1937-ի դեկտ. 31-ին: Տարածությունը 547 *կմ²* է, բն. 9229 մարդ (1979): Վարչական կենտրոնը *Ղուկասյան* գյուղն է:

Քարտեզը տես 33-րդ էջից առաջ՝ ներդիրում:

**Բնական պայմանները:** Ղ. շ. գտնվում է Աշոցքի սարահարթի արլ. մասում, Ախուրյան և Չիչխան գետերի վերին հոսանքի ավազանում: Տարածքի մեծ մասն ունի ավելի քան 2000 *մ* բարձրություն: Առավելագույն բարձրությունը 3198 *մ* է (Աչքասար լեռ): Մակերևույթը լեռնային է: Հս-արլ-ում միջօրեականի ուղղությամբ տարածվում է Ջավախքի լեռնաշղթայի հվ. մասը, որի ցածրադիր լեռնաբազուկները արլ-ից արմ. ուղղությամբ ձգվում են շրջանի տարածքում: Հվ-արլ-ում Բազումի լեռնաշղթայի ճյուղավորություններն են, որոնք Ջավախքի լեռնաշղթայից բաժանվում են Քարախաչի լեռնանցքով: Համեմատաբար հարթավայրային են շրջանի հս. և արմ. մասերը (Ղազանչիի, Վարդաղբյուրի տարածքներում): Ռելիեֆի բնորոշ ձևերից են փոքր հարաբերական բարձրությամբ հրաբխային կոները: Տարածված են քարակարկառները: Ղ. շ. գտնվում է 8—9-բալանոց սեյսմիկ գոտում: Կան գորշ ածխի, կրաքարի, բազալտի, տորֆի պաշարներ, հանքային աղբյուրներ: Կլիման չափավոր ցուրտ է: Ձմեռը երկարատև է (մինչև 7—8 ամիս)՝ սառնամանիքներով: Ամառը կարճատև է, զով: Տարեկան միջին ջերմաստիճանը —2°C-ից 4°C է, հունվարինը՝ —12,7°C, հուլիսինը՝ 16,4°C: Առավելագույն ջերմաստիճանը 32°C է, նվազագույնը՝ —42°C: Տարեկան տեղումները 600—900 *մմ* են: Ձնածածկույթի հաստությունը 70—80 *սմ* է, առանձին տարիներինը՝ ավելի քան 1 *մ*: Արմ-ում շրջանի տարածքի մեջ է մտնում Ախուրյանի վերին հոսանքը, որին միախառնվում է Ջավախքի լեռներից սկիզբ առնող Ղուկասյան վտակը: Հվ-արլ-ով հոսում է Փամբակի վտակ Չիչխանը: Կան բազմաթիվ աղբյուրներ, որոնց ջրերն օգտագործվում են կենցաղային կարիքների համար: Գերակշռում են լեռնային սևահողերը, ռելիեֆի բարձրադիր մասերում՝ թույլ հզորության ճմատորֆային հողերը: Առավել բարձր վայրերում բացակայում է համատարած հողածածկույթը: Տիրապետում է տափաստանային և մարգագետնա-տափաստանային բուսածածկույթը (փետրախոտահացազգիներ, սիզախոտ, շյուղախոտ, դաշտավլուկ ևն): Լեռների բարձրադիր մասերում տարածված են ալպյան գորգերը: Բնորոշ են լեռնատափաստանային կենդանիները. գայլ, աղվես, նապաստակ, փորսուղ, զանազան կրծողներ, թռչուններ, միջատներ ևն:

**Բնակչությունը:** Ղ. շ. ՀՍՍՀ նոսր բնակեցված շրջաններից է: Խտությունը 1 *կմ²* վրա 17 մարդ է: Համեմատաբար խիտ են բնակեցված հարթավայրային շրջանները: Բնակիչների 99,9%-ը հայեր են: Շրջանն ունի 25 գյուղական բնակավայր, 9 գյուղսովետ:

Ղ. շ-ի բնակավայրերն են՝ Արփենի, Բաշգյուղ, Բավրա, Գոգհովիտ, Ջույգաղբյուր, Թավշուտ, Թորոսգյուղ, Լեռնագյուղ, Կարմրավան, Կաքավասար, Կրասար, Հարթաշեն, Ձորաշեն, Ղազանչի, Ղուկասյան, Մեծ Սեպասար, Մուսայելյան, Սարագյուղ, Սարապատ, Սալուտ, Սիզավետ, Վարդաղբյուր, Ցողամարգ, Փոքր Սարիար, Փոքր Սեպասար:

**Պատմական ակնարկ:** Ղ. շ-ի տարածքը հնում մտնում էր Մեծ Հայքի Այրարատ նահանգի մեջ և կազմում էր նրա Աշոցք գավառը, որը ուրարտ. արձանագրություններում հիշատակվում է Իշկիգուլու (Iškigulu) ձևով: Գավառի վարչական կենտրոնը եղել է Ղազանչի գյուղի տեղում գտնվող Աշոցք ավանը: Բագրատունիների օրոք շրջանի տարածքը մտնում էր Անի—Շիրակի թագավորության մեջ: Հետագայում այն անցավ Զաքարյաններին, ապա՝ թաթար-մոնղոլների, ակ-կոյունլուների, պարսկական տիրապետության տակ, XIX դ. սկզբին այն միացվեց Ռուսաստանին: Մինչև հեղափոխությունը Ղ. շ-ի տարածքը Ամասիայի շրջանի հետ միասին կոչվում էր Աղբաբայի գավառակ և մտնում էր Երևանի նահանգի Ալեքսանդրապոլի գավառի մեջ: 1930-ից մինչև ինքնուրույն շրջան դառնալը Ամասիայի հետ կազմում էր Աղբաբայի շրջանը: Ըստ պատմական տվյալների Ղ. շ-ի ներկա տարածքում մարդիկ բնակություն են հաստատել վաղ ժամանակներից: Այդ են վկայում կիկլոպյան ամրոցի մնացորդները Ցողամարգում և ավելի քան 3000-ամյա բնակավայրի հետքերը Լեռնագյուղում:

Ղ. շ-ի կոմունիստական կուսակցական կազմակերպությունը (ներկա Ամասիայի շրջանի հետ միացյալ) ստեղծվել է 1920-ի դեկտեմբերին՝ Ալեքսանդրապոլի գավառային կազմակերպության կազմում, որպես Աղբաբայի գավառակային կազմակերպություն: Ինքնուրույն կուս. կազմակերպություն է դարձել գավառների վերացումից հետո՝ 1937-ի դեկտեմբերից: 1981-ին Ղ. շ-ում գործում էր 43 կուսակցական սկզբնական կազմակերպություն՝ 732 կոմունիստով: Մինչև 1981-ի հունվ. 1-ը շրջանային կուսակցական կազմակերպությունը գումարել է 29 կոնֆերանս: Ղ. շ-ի ԼԿԵՄ կազմակերպությունը 1981-ի հունվ. 1-ին ուներ 53 սկզբնական կազմակերպություն՝ 2058 կոմերիտականով:

**Տնտեսությունը:** Նախասովետական տարիներին շրջանում զբաղվում էին անասնապահությամբ: Արդ. որևէ ձեռնարկություն չկար: Այժմ Ղ. շ-ում գյուղատնտեսության հետ միասին զարգանում է նաև արդյունաբերությունը: Շրջանի համախառն արտադրանքի 70%-ը տալիս է գյուղատնտեսությունը, 30%-ը՝ արդյունաբերությունը: 1981-ին շրջանն ուներ 13 սովետական տնտեսություն, 5 միջտնտեսային ձեռնարկություն: Հողային ֆոնդը 43000 *հա* է, որից վարելահող՝ 13473 *հա*, արոտավայր՝ 9267 *հա*, խոտհարք՝ 5463 *հա*, անտառ՝ 954 *հա*, պտղատու այգի՝ 28 *հա*, այլ հողակտորներ՝ 68 *հա*: Ոռոգվող հողատարածությունները կազմում են 885 *հա*: Գործում է Ախուրյանի աջափնյակի ջրանցքը: Գյուղատնտեսության հիմնական ճյուղը կաթնամսատու անասնապահությունն է, որը տալիս է գյուղատնտ. համախառն արտադրանքի մոտ 70%-ը (1981): Շրջանն ունի 20992 խոշոր, 70820 մանր եղջերավոր անասուն, 1085 խոզ (1981): Զբաղվում են նաև դաշտավարությամբ: Մշակում են հացահատիկային և կերային կուլտուրաներ: Արդ. առաջին ձեռնարկությունը՝ պանրագործարանը, կառուցվել է 1928-ին՝ Ղուկասյան գյուղում (1973-ից տեղափոխվել է Մուսայելյան գյուղ): Արտադրում է «Շվեյցարական» և «Լոռի» պանիր ու այլ կաթնամթերքներ: Ղուկասյանում է ժողովրդական սպառման ապրանքների գործարանը: Խճուղային ճանապարհների երկարությունը 127 *կմ* է, որից 47 *կմ*՝ միութենական նշանակության. Ղ. շ-ով են անցնում Երևան—Լենինական—Ախալքալաք, Լենինական—Կալինինո—Թբիլիսի (Քարախաչի լեռնանցքով) խճուղիները, Ամասիա—Ղուկասյան գազամուղը: Կա կապի հանգույց՝ 9 բաժանմունքով:

**Առողջապահությունը:** Ղ. շ-ում գործում է մեկ շրջանային հիվանդանոց (75 մահճակալով), մեկ պոլիկլինիկա, սանիտարահակահամաճարակային, շտապ օգնության կայաններ, 3 ամբուլատորիա (Ղազանչի, Թորոսգյուղ, Փոքր Սարիար), 15 բուժմանկաբարձական կետ, մեկ դեղատուն:

Շրջանում կա 156 բուժաշխատող, որից 16-ը՝ բժիշկ:

**Մշակույթը:** 1980/81 ուս. տարում Ղ. շ-ում գործում էին 8 միջնակարգ, 8 ութամյա, 7 տարրական (2017 աշակերտ, 274 ուսուցիչ, որից 172-ը՝ բարձրագույն կրթությամբ), մեկ երաժշտական դպրոցներ, 1 մսուր-մանկապարտեզ, պրոֆտեխնիկական ուսումնարան: Շրջանում կա 6 կուլտուրայի տուն (Ղուկասյան, Ղազանչի, Թորոսգյուղ, Փոքր Սարիար, Բավրա, Ցողամարգ), 20 ակումբային հիմնարկ, 1 կենտրոնական գրադարան (22 մասնաճյուղով), 7 կինոսարքավորում:

Օգտվում են ռադիո- և հեռուստատեսային հաղորդումներից:

Լույս է տեսնում «*Գարուն*» շրջանային թերթը:

Պատկերազարդումը տես 6-րդ հատորի 704—705-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակ XXVIII:

**ՂՈՒԿԱՍՅԱՆՑ ՀԱՅՐԱՊԵՏ** [(ծածկանունը՝ Գ ա ր ե գ ի ն), 1845, Շամախի — 1920, Բաքու], մանկավարժ, հրապարակախոս, հասարակական գործիչ: Ավարտել է Շամախու հայոց հոգևոր (1867), ապա՝ տեղի քաղաքային դպրոցները: Աշխատել է որպես ուսուցիչ և տեսուչ Շամախու հոգևոր, Արղության-Սահականուշյան (Ալեքսանդրապոլ), Գայանյան, Մարիամյան (Թիֆլիս), Հռիփսիմյան, Մեսրոպյան (Բաքու) դպրոցներում և Գևորգյան ճեմարանում: Հայկ. դպրոցների փակվելուց հետո (1896) ձեռնադրվել է քահանա՝ Գարեգին անվամբ: Հեղինակ է «Դասագիրք ընթերցանության Հայոց դպրոցների համար» (վերահրատարակվել է հինգ անգամ), «Ընդհանուր պատմություն» (1880), «Համառոտ հայացք մայրենի լեզվի ուսման վրա» (1874), «Տասնամյակ Սահականուշյան օրիորդաց ուսումնարանին հայոց Ալեքսանդրապոլա» (1883), «Քերականութիւն գրաբար լեզուի Հայոց ի պէտս նորավարժից» (1884) ևն աշխատությունների, թարգմանել է Ա. Դիստերվեգի «Հիմնական դիդակտիկական կանոններ» (1880), «Եղիշեի պատմությունը Վարդանի և հայոց պատերազմի համար» (աշխարհաբար, 1891) ևն գործեր: *Հ. Ներսիսյան*

**ՂՈՒԿԱՍՈՎ** Պավել (Պողոս) Հովսեփի (1858— մահ. թ. անհտ.), Ռուսաստանի ֆինանսական օլիգարխիայի ներկայացուցիչ, Բաքվի խոշոր նավթարդյունաբերող, ինժեներ: Եղբոր՝ Արշակի հետ ղեկավարել է նավթային մի շարք խոշոր ընկերություններ և վարչություններ: Եղել է Բաքվի նավթարդյունաբերողների համագումարների նախագահ (1890—1906, 1915—17), 1906—12-ին՝ Պետ. խորհրդի անդամ, 1916-ից՝ Ռուսաստանի առևտրաարդյունաբերական բանկային խորհրդի նախագահ: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո Ղուկասովները տարագրվել են: 1920-ական թթ. եղել են Փարիզում կազմակերպված «Տորգպրոմ» հակահեղափոխական կազմակերպության ակտիվ գործիչներ:

**ՂՈՒՇՉԻ**, հայաբնակ գյուղ Վրացական ՍՍՀ Ծալկայի շրջանում, Խրամ գետի ափին, շրջկենտրոնից 25 *կմ* արևմուտք: Սովետական տնտեսությունն զբաղվում է հացահատիկի, բանջարեղենի, կարտոֆիլի մշակությամբ, այգեգործությամբ, անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կապի բաժանմունք, մանկապարտեզ, բուժկայան, անասնաբուժական կայան: Հիմնադրվել է 1830-ին: 1870-ին Ղ-ում կառուցվել է նոր եկեղեցի և կամարակապ քարե կամուրջ Խրամ գետի վրա: Ղ-ում է ծնվել գեներալ-մայոր Հ. Սիմոնյանը:

**ՂՈՒՐԱՆ** (< արաբ. gur'ān — ընթերցվածք), *մահմեդականության* սուրբ գիրքը: Ղ. *Մահմեդի* քարոզների հավաքածուն է, որը պարունակում է կրոնադավանական, ծիսական և կենցաղային պատվիրաններ, իրավական դրույթներ, խրատներ, առակներ, աղոթքներ, անեծքներ ևն: Ղ., իբր, վերջին մարգարե Մուհամմեդին որպես «հայտնություն» ալլահի (աստծու) թելադրած պատգամների ամբողջությունն է: Մուհամմեդի օրոք բանավոր տարածված և 632-ից գրառված այդ քարոզները Օսման խալիֆի հրամանով 650-ական թթ. խմբագրվել և ճանաչվել են որպես կանոնացված («Օսմանի Ղ.»): Ղ-ի տեքստի ուղղագրությունը, ընթերցման կանոնները, կառուցվածքը վերջնականորեն կանոնացվել է Կահիրեի 1923-ի պաշտոնական հրատարակությամբ: Ղ. բաղկացած է 114 գլխից (սուրահներից): Ղ-ի դրույթները անվել են հուդայական ու քրիստոնեական, մասամբ՝ նաև զրադաշտական ու մանիքեական ուսմունքներից: Ըստ Ղ-ի, ալլահը միակ և ամենազոր արարիչն է, որն իր պատգամները, հատկապես աշխարհի վախճանի, վերջին դատաստանի և հանդերձյալ կյանքի վերաբերյալ, մարդկանց հաղորդում է մարգարեների միջոցով: Ղ. սահմանում է հավատացյալների հիմնական պարտականությունները, ծիսակարգը, պաշտամունքը ևն: Ղ-ով սրբագործվել են սոցիալական անհավասարությունը, մասնավոր սեփականությունը, կնոջ ոչլիարժեքության վերաբերյալ դրույթը և դասակարգային հասարակության այլ ատրիբուտները: Ղ-ում առկա անորոշություններն ու հակասությունները անհրաժեշտ դարձրեցին մեկնությունները (թաֆսիր): Ղ-ի որոշ դրույթներ քննադատել են արաբ մտածողները [Բաշշար իբն Բուրդ, Աբու՛լ Աթախիա (VIII դ.), Իբն առ-Ռավանդի (IX դ.), Աբուլ-լ-ալա-ալ-Մաարի (XI դ.)]: Ղ-ի մեկնություններում արտացոլվել են մահմեդական աստվածաբանության զարգացման զանազան միտումները, մահմեդական համայնքում սոցիալ-քաղաքական և գաղափարախոսական պայքարը, ինչպես և սոցիալ-տնտեսական փոփոխություններին Ղ. հարմարեցնելու ձգտումը: Ղ-ի մեկնությունները և ուսումնասիրությունն սկզբնավորել են մահմեդական աստվածաբանությունը, քաղաքացիական և կրոնական իրավունքը (*շարիաթ*), նպաստել արաբ. մշակույթի զարգացմանը: Ղ. արաբ., ինչպես և համաշխարհային գրականության մեծարժեք հուշարձան է, որի լեզուն ու ոճը համարվում են դասական արաբերենի անկրկնելի իդեալ: Ղ., հակառակ աստվածաբանների արգելքին, թարգմանվել է արև. մի շարք լեզուներով (թուրքերեն, պարսկերեն, ուրդու ևն, հատվածաբար՝ նաև հայերեն), հետագայում նաև եվրոպական լեզուներով (ֆրանս. 1647-ին, լատ. 1698-ին, ռուս. 1716-ին ևն): Ղ. հայերեն ամբողջական թարգմանվել է 1909-ին (վերահրատարակվել է 1910-ին, թրգմ. Ա. Ամիրխանյանց), 1912-ին (թրգմ. Հ. Գուրպեթյան), 1911-ին՝ ֆրանսերենից (թրգմ. Լ. Լարենց): XIX դ. սկսված Ղ-ի գիտական ուսումնասիրությունը, պատմամշակութային և քննադատական մեկնաբանությունը հնարավորություն տվեցին վերհանել Ղ-ի ստեղծման իսկական պատմությունը, նրանում տեղ գտած իրականն ու առասպելա-աստվածաբանականը, ճշգրտել Մուհամմեդի կենսագրությունը:

*Գրկ.* տես *Մահմեդականություն* հոդվածի գրականությունը: *Ե. Նալչաջյան*

**ՂՈՒՐԴՂՈՒԼԱՂ**, գյուղ Հայկական ՍՍՀ Գորիսի շրջանում, շրջկենտրոնից 26 *կմ* հարավ-արևելք: Կոլտնտեսությունն զբաղվում է անասնապահությամբ և կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, կինո, բուժկայան:



Ղուրդղուլաղ

**ՂՈՒՐՍԱԼԻ**, գյուղ Հայկական ՍՍՀ Սպիտակի շրջանում, Փամբակ գետի աջ ափին, շրջկենտրոնից 7 *կմ* հարավ-արևելք: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև շաքարի ճակնդեղի, հացահատիկի և կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, կինո, կապի բաժանմունք, կենցաղսպասարկման տաղավար, բուժկայան: Գյուղում պահպանվել է եկեղեցի (VII դ.):



Ղուրսալի

**ՂՓՉԱՂԵՐԵՆ**, կ ու մ ա ն ե ր ե ն, պ ո լ ո վ ց ի ն ե ր ի լ ե զ ու, պատկանում է թյուրքական լեզվաընտանիքի ղփչաղյան լեզվախմբին: Խոսվել է Միջին Ասիայի տարածքում, մերձսևծովյան շրջաններում, *Ղրիմում* և *Բալկանյան թերակղզու* մի մասում: Հնչյունական համակարգը աչքի է ընկնում թյուրքական լեզուներին բնորոշ համապատասխանությունների անկայունությամբ [տաս/տաշ (քար) տիպի բառերում], քերականական կառուցվածքը՝ ածական դերանունների զուգահեռ ձևերի օգտագործմամբ, ինչպես նաև օղուզյան բառապաշարի առկայությամբ:

**ՂՓՉԱՂՆԵՐ** (պ ո լ ո վ ց ի ն ե ր, կ ու մ ա ն ն ե ր, կ ու ն ե ր), միջնադարյան թյուրքալեզու ժողովուրդ: X դ. զբաղեցնում էին Հվ-Արմ. Ղազախստանի տարածքը: Բաժանված էին ցեղերի և վարում էին վաչկատուն կյանք: X դ. կեսին, անցնելով Վոլգան, հորդեցին Հյուսիսային Կովկասի և Հյուսիսային Մերձսևծովյան շրջանի տափաստանները: Նրանց գրաված հսկայական տարածքը, որը տարածվում էր Դանուբից մինչև Տյան Շան, XI—XV դդ. կոչվում էր Դ ե շ տ-ի-Ղ ը փ չ ա ղ (Ղփչաղների հարթավայր): Ղ. չունեին պետություն, ապրում էին ցեղային միություններով, որոնց գլուխ կանգնած էր խանը: Հիմնական զբաղմունքն անասնապահությունն էր: Զորքը կազմված էր թեթև և ծանր հեծելազորից: Ռուս. տարեգրություններում Ղ. առաջին անգամ հիշատակվում են 1054-ին, երբ նրանք սկը-

սում են պարբերաբար ասպատակել Ռուսիայի հողերը: Ղ. արշավում են նաև դեպի Հունգարիա (1070, 1091, 1094) և Բյուզանդիա (1087, 1095):

1064-ին, երբ սելջուկները գրավեցին Անին, մեծ թվով հայեր գաղթեցին Կասպից և Սև ծովերի ափերը, որոնք գտնվում էին Ղ-ի ձեռքին: Հայերը քաղ. կախվածության մեջ են ընկել նրանցից: Ղ. չունեին գիր, և *ղփչաղերենը* յուրացրած հայերը ստիպված էին Ղ-ի լեզվով որևէ բան գրելու համար օգտագործել հայերեն տառերը. այսպես է առաջացել հայատառ ղփչաղերենը: XII դ. սկզբին կիևյան իշխաններ Սվյատոպոլկ Իզյասլավիչը և Վլադիմիր Մոնոմախը ձեռնարկել են մի շարք հաղթական արշավանքներ, որոնց հետևանքով Կիևյան Ռուսիայի սահմանների մոտ Ղ-ի թիվը զգալիորեն պակասել է: Շուրջ 40 հզ. Ղ. փախել են Վրաստան՝ Դավիթ Շինարարի մոտ, որտեղ նրանք մասնակցել են թուրք-սելջուկների դեմ կռիվներին: Ռուս. իշխանների բազմաթիվ արշավանքները ջլատել են Ղ-ի ուժերը, և երբ սկսվեցին մոնղոլ-թաթարական արշավանքները, նրանք անկարող էին պաշտպանվել: 1223-ին, Կալկայի ճակատամարտում կրած պարտությունից հետո, արլ. Ղ. խառնվեցին մոնղ. բանակի հետ և հետագայում կազմեցին *Ոսկե հորդայի* հիմնական բնակչությունը: Ղ-ի արմ. հատվածը Բաթու խանի արշավանքից հետո անցավ նախ Հունգարիա, ապա՝ Բուլղարիա ու Եգիպտոս և միախառնվեց տեղի ժողովուրդներին: Ղ-ի դեմ ռուս ժողովրդի մղած հերոսական պայքարը արտացոլված է *«Ասք Իգորի ճակատամարտի մասին»* էպոսում:

*Ա. Գրիգորյան*



**Ճ**, հայերեն այբուբենի տասնիններորդ տառը: Անունն է ճէ: Ստեղծել է Մեսրոպ Մաշտոցը՝ տառակերտման սեփական սկզբունքով: Մտնում է «կրկնավոր» տառախմբի մեջ: Կազմված է երեք ուղղաձիգ՝ երկար և դրանից ձախ՝ կարճ և աջ՝ լայն տարրերից: Ընդ որում կարճը և երկարը իրար են միանում ստորին ծայրերից, ապա կարճը և երկարին թեքությամբ հատող լայնը կրկնվող նուրբով վերին ծայրերից միանում են իրար: Հետագայում դյուրագրության և քիչ տեղ զբաղեցնելու համար երկարը հակվում է դեպի ձախ, և տառը հավաք տեսք է ընդունում: Համարյա նույնությամբ գործածվում է *գրչագրում* և *երկաթագրում*, ինչպես նաև *գլխագրում*՝ Ճ, Ճ, Ճ: Վիմագրություններում ավելի է պարզեցվում, և տառը ստծեղվում է երեք համարյա ուղիղ գծերի հատումով:

*Բոլորգրում* Ճ-ի գծագրումն սկսվում է իրար միացած նուրբերով՝ Ճ: Բոլորգրից էլ սերում են *շղագիրը* և *նոտրգիրը*՝ Ճ, Ճ: Ճ տառը նշանագրում է ժամանակակից արևելահայ գրական տարբերակի առաջնալեզվային լեզվատամնային պայթաշփական խուլ բաղաձայն հնչյունը (հընչույթը): Արևմտահայ գրական տարբերակում այն ամենուրեք ձայնեղ է (ճաշ- ջաշ, հաճախ-հաջախ): Ճ նշանակել է հարյուր և հարյուրավորների սկիզբն է, որից հետո եկող տառերը հաջորդաբար ավելանում են հարյուր միավորով: Բյուրի (Ճ ) նշանով նշանակում է մեկ միլիոն: Արաբ. թվանշանների ընդունումից հետո էլ գործածվել է որպես քանակական և դասական թվական: Այժմ գործածվում է միայն որպես դասական թվական (Ճ—հարյուրերորդ):

*Ա. Մաթևոսյան*

**ՃԱԲՈՒԿԻԱՆԻ** Վախթանգ Միխայիլի [ծն. 27.2(12.3). 1910, Թիֆլիս], սովետական բալետի վրացի դերասան, բալետմայստեր և մանկավարժ: ՍՍՀՄ ժող. արտիստ (1950): 1924-ին ավարտել է Մ. Ի. Պերինիի ստուդիան և ընդունվել Թիֆլիսի օպերայի և բալետի թատրոն: 1926—29-ին վերապատրաստվել է Լենինգրադի Ա. Յա. Վահանովայի անվ. պարարվեստի ուսումնարանում: 1929—41-ին՝ Լենինգրադի օպերայի և բալետի թատրոնի մենապարող. դերապարերից են՝ Բազիլ (Մինկուսի «Դոն Կիխոտ»), Ալբերտ (Ադանի «Ժիզել»), Ֆրոնդոսո (Ա. Կրեյնի «Լաուրենսիա»):


Գրչագիր V-X դդ.


Գլխագիր V-XX դդ.


Երկաթագիր V-IX դդ.


Գրչագիր մինչև XII դ.


Երկաթագիր VI-X դդ.


Երկաթագիր VI-X դդ.


Բոլորգիր V-XX դդ.


Գրչագիր VIII-XIII դդ.


Երկաթագիր VII-XV դդ.


Գրչագիր V-X դդ.


Գրչագիր V-X դդ.


Շղագիր XII-XX դդ.


Նոտրգիր XVI դ.


Գրչագիր X դ.


Շղագիր XX դ.


Նոտրգիր XV-XIX դդ.

Նույն թատրոնում բեմադրել է Բալանչիվաձեի «Լեռների սիրտը» (1938), Կրեյնի «Լաուրենսիա» (1939) և այլ բալետներ: 1941—73-ին գլխավորել է Թբիլիսիի Զ. Փալիաշվիլու անվ. օպերայի և բալետի թատրոնի բալետային խումբը, բեմադրել է Կիլաձեի «Սինաթլե» (1947), Թորաձեի «Գորդա» (1950), Մաչավարիանիի «Օթելլո» (1957), Ցինցաձեի «Դևը» (1961) ևն: 1933-ից հյուրախաղերով եղել է արտասահմանում: 1963-ին Երևանում հանդես է եկել Օթելլոյի, Գորդայի, Ֆրոնդոսոյի և այլ դերապարերով: Դասավանդել է Թբիլիսիի պարարվեստի ուսումնարանում (1950—77-ին՝ գեղ. ղեկավար), 1965—1970-ին գլխավորել է Թբիլիսիի Ռուսթավելու անվ. թատերական ինստ-ի բալետմայստերական բաժինը: Արժանացել է ՍՍՀՄ պետ. (1941, 1948, 1951) և լենինյան (1958) մրցանակների:

Պատկերազարդումը տես 2-րդ հատորի 225-րդ էջից առաջ՝ ներդիրում:

**ՃԱԳԱՐ** վ ա յ ր ի (Oryctolagus cuniculus), նապաստականմանների կարգի կաթնասուն կենդանի: Ընտանի ճագարի ցեղերի նախահայրը (տես *Ճագարաբուծություն*): Մարմնի երկարությունը 35—45 *սմ* է, կենդանի միջին զանգվածը՝ 1,3—2,2 *կգ*: Գույնը՝ գորշ մոխրագույն: Բազմանում է տարին մի քանի անգամ (յուրաքանչյուր ծնին՝ 3—9 ձագ): Սնվում է հիմնականում խոտաբույսերով: Հսկայական գաղութներով ապրում է բաց տարածություններում: Որսի լավ կենդանի է (օգտագործվում են միսը և մորթին): Հայրենիքը Հարավ-Արևմտյան Եվրոպան և Հյուսիս-Արևմտյան Աֆրիկան է: Ներմուծվել է և լայնորեն տարածվել Կենտրոնական Եվրոպայում, Մեծ Բրիտանիայում, Նոր Զելանդիայում, Ավստրալիայում, Հարավային Աֆրիկայում և ԱՄՆ-ի հս. շրջաններում, ՍՍՀՄ-ում՝ Հարավ-Արևմտյան Ուկրաինայում: Որոշ երկրներում (օրինակ, Ավստրալիայում) մեծ վնաս է հասցնում գյուղատնտեսությանը և ֆաունային:

**ՃԱԳԱՐԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆ**, անասնապահության ճյուղ. զբաղվում է ճագարների բուծմամբ՝ միս, մորթի և աղվամազ ստանալու համար: Ճագարի միսը դյուրամարս, դիետիկ սննդամթերք է (շատ է սպիտակուցի և ավելի քիչ ճարպի՝ հատկապես խոլեսթերինի պարունակությունը): Մորթին արժեքավոր հումք է մորթեղենի ար-



Վ. Մ. Ճաքուկիանի

դյունաբերության համար: Աղվամազը թեթև է, փափուկ, տաք, օգտագործվում է տրիկոտաժ պատրաստելու համար: Կաշվից պատրաստում են թեթև կոշիկներ և կաշվե իրեր: Ճագարները նաև լաբորատորային (կենսբ., բժշկ., անասնաբուժ. փորձերի համար) կենդանիներ են:

Ճագարները պատկանում են կրծողների կարգի նապաստակների ընտանիքին: Սագել են վայրի ճագարներից: Ընտանիները վաղահաս են և բնութագրվում են ինտենսիվ աճով: Կարող են բազմանալ ամբողջ տարին: Սեռահասուն են դառնում 3—4 ամսականում: Հղիության տևողությունը 28—32 օր է: Մեկ մայր ճագարը տարեկան կարող է պտղաբերել 3—6 անգամ (յուրաքանչյուր ծնից ստացվում է 6—8, երբեմն՝ մինչև 15 և ավելի ձագ): Նորածին ճագարի կենդանի զանգվածը 60—70 գ է, այն կրկնապատկվում է 6-րդ օրը, իսկ 30 օրականում ավելանում 9—10 անգամ: Կյանքի տևողությունը 7—10, իսկ տնտ. օգտագործման ժամանակաշրջանը 2—3 տարի է: Հիմնական կերերն են. կանաչ խոտաբույսերը, կերային արմատապտուղները, գազար-կաղամբային սիլոսը, մանրացողուն խոտը, հացահատիկը, համակցված կերը են: Օժանդակ տնտեսություններում կարելի է օգտագործել նաև սննդի թարմ մնացորդները: Լավագույն մորթի ստացվում է աշնանը և ձմռանը: Աշխարհում բուծվում է մոտ 60 ցեղ, որոնք ըստ մազածածկի բնույթի բաժանվում են մորթատու և աղվամազատու խմբերի: ՍՍՀՄ-ում տարածված են հատկապես մորթատու խմբի ճագարի ցեղերը (սովետական շինշիլա, սպիտակ հսկա են): ՀՍՍՀ-ում բացի այդ ցեղերից բուծվում է նաև սովետական մառդերը (ստացվել է Հայաստանում Մ. Գ. Բագրատյանի ղեկավարությամբ):

*1*. Սպիտակ աղվամազատու, 2. սովետական շինշիլա, *3*. սովետական մառդեր, *4*. գորշ հսկա, *5*. սպիտակ հսկա



ՍՍՀՄ-ում Ճ. սկսել է զարգանալ 1927—1929-ին, երբ կազմակերպվեցին տոհմային ճագարաբուծական սովետական տնտեսություններ, կոլտնտեսային ֆերմաներ և պետ. տոհմաբուծարաններ: Տարածված է ՌՍՖՍՀ իվ. մարզերում ու երկրամասերում, Թաթարական ԻՍՍՀ-ում, Ուկրաինայում, Բելոռուսիայում, Մոլդավիայում, Ղազախստանում, Վրաստանում են: Բուծվում են հիմնականում մսամորթատու, առանձին տնտեսություններում՝ մորթատու, մսատու և աղվամազատու ցեղեր: Տարվա ընթացքում մեկ մայր ճագարի հաշվով ստացվում է 20—25 մատղաշ (մոտ 55—60 *կգ* միս) և նույնքան մորթի: Ճագարները պահվում են վանդակներում՝ բացօթյա կամ հատուկ ճագարանոցներում և արդ. տիպի համալիրներում:

Արտասահմանյան երկրներից Ճ. զարգացած է Ֆրանսիայում, Իտալիայում, ԱՄՆ-ում, Մեծ Բրիտանիայում, Հունգարիայում, Չեխոսլովակիայում, Լեհաստանում, Բուլղարիայում են: 1979-ին ամենաշատ ճագարի միս է արտադրել Ֆրանսիան:

*Լ. Մինասյան*

**ՃԱԳԱՐԱՄԿՆԵՐ** (Dipodidae), կրծողների կարգի կաթնասունների ընտանիք: Մարմնի երկարությունը 5—25 *սմ* է, պոչը մարմնից երկար է և հաճախ վերջանում է մազափնջով: Ետին վերջավորությունները երկար են առջևիններից, և շատ տեսակներ տեղաշարժվում են միայն դրանց վրա ցատկոտելով: Տարածված են Եվրոպայում, Ասիայում, Հյուսիսային Աֆրիկայում և Հյուսիսային Ամերիկայում: Հայտնի է Ճ-ի մոտ 30 տեսակ, որից 22-ը՝ ՍՍՀՄ-ում: ՀՍՍՀ-ում հանդիպում է Ճ-ի 2 տեսակ (փոքր Ճ. և փոքրասիական լեռնային Ճ.), որոնք տարածված են լեռնային տափաստաններում և կիսաանապատներում: Ճ. վարում են գիշերային և մթնշաղային կյանք, ձմռանը քուն են մտնում: Բազմանում են գարնանը, էգը ծնում է 1—8 ձագ: Սնվում են հիմնականում բույսերի ստորգետնյա մասերով և սերմերով: Տնտ. նշանակությունն աննշան է: Կարող են վնասել հացահատիկային կուլտուրաներին, որոշ տեսակներ հիվանդությունների հարուցիչների տարածողներ են:

**ՃԱԺՎԱՆ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Սպարկերտի գավառակում: 1909-ին ուներ 50 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Ճ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ:

**ՃԱԽԱՐԱԿ**, պարզ մեխանիզմ կամ բեռնամբարձ մեքենաների դետալ, որի ակոսավոր անվի վրայով գցված է շղթա, ճոպան կամ պարան: Ծառայում է քարշուժի ուղղության փոփոխման և ուժի կամ արագության շահում ստանալու, ավելի սակավ՝ ոլորող մոմենտի փոխանցման համար: Ըստ նշանակման Ճ-ները լինում են. ուղղորդիչ, հավասարեցնող, շարժական (նկ. ) և հաղորդակային (լիսեռին պտտական շարժում հաղորդելու համար): Ուժի կամ արագության մեծ շահում ստանալու նպատակով կիրառում են Ճ-ների համակցությամբ բեռնամբարձ մեխանիզմ՝ *բազմաճախարակ*:




Տարբեր նշանակման ճախարակների սխեմաներ. *ա*. ուղղորդիչ, *բ*. հավասարեցնող, *գ*. շարժական՝ ուժի շահում ստանալու համար, *դ*. շարժական՝ ճանապարհի շահում ստանալու համար

**ՃԱԽԱՐԱԿ**, թել մանելու գործիք: Բաղկացած է թեք ոտքերով պատվանդանի վրա

Ճագարամկներ. *1*. ժիտկովի, *2*. խաստապոչ, *3*. թավոտն, *4*. մեծ, *5*. փոքրասիական



ամրացված առանցքակալից, դրա միջով անցնող և երկու կողմերում միակտոր փայտից կամ միմյանց վրա խաչաձև դըրված ուղաձև բարակ տախտակներով թևերից ու թելը փաթաթող իլիկից: Թևերը միմյանց միանում են վերին և ստորին եզրերի ատամների արանքով անցկացված բրդե թելերով և կազմում անվի հակառակ երեսը: Թևերի վրա փաթաթված կպրած թելով առանցքի վրա ամրացված շուռտվիկի միջոցով գործի դրվող անվի պտույտը փոխանցվում է իլիկին: Ճ-ով մանում էին ցանկացած բարակության և ոլորման աստիճանի թել: Այժմ Ճ. օգտագործվում է հազվադեպ:

*Ն. Ավագյան*

**ՃԱԽԱՐԱԿԱՅԻՆ ՆՅԱՐԴ** (nervus trochlearis), գլխուղեղային չորրորդ զույգ նյարդը, հիմնականում սոմատիկ շարժիչ է, նյարդավորում է ակնագնդի վերին թեք մկանը: Ճ. ն-ի զույգ կորիզները գտնվում են միջին ուղեղում, ուղեղի ջրանցքը շըրջապատող կենտրոնական գորշ նյութում: Կորիզից սկսվող նյարդարմատը նշված նյութով անցնում է ուղեղի վերին առագաստ, խաչվում է հակառակ կողմի նյարդարմատի հետ, դուրս գալիս գլխուղեղի թիկնային մակերես, ապա շրջագրկում դրսի կողմից ուղեղի ոտիկը, փապարային երակածոցի դրսի պատի հաստությունով ուղղվում է առաջ և ակնակապճի վերին ճեղքով մտնում է ակնակապիճ ու վերջանում ակնագնդի վերին թեք մկանում: Ճ. ն-ի ցողունը պարունակում է նաև սոմատիկ զգացող (ակնային նյարդից) և սիմպաթիկ (փապարային հյուսակից) նյարդաթելեր: Ճ. ն-ի ախտահարումն արտահայտվում է վերին թեք մկանի լուծանքով, որը դժվարացնում է ակնագնդի շարժումը:

**ՃԱԽՐԱԹԻՌ**, առանց շարժիչի *թռչող ապարատ*: Օդից ծանր է, շարժվում է համընթաց՝ իր կշռի ազդեցությամբ: Ճ-ի թռիչքը հիմնված է նույն ֆիզիկական օրենքների վրա, ինչ ինքնաթիռի թռիչքը: Հանդարտ մթնոլորտում թռչելիս Ճ. հորիզոնի նկատմամբ որոշ անկյան տակ անընդհատ իջնում է: Մթնոլորտում օդի վերընթաց հոսանքների առկայության դեպքում Ճ. կարող է թռչել առանց բարձրություն կորցնելու կամ նույնիսկ բարձրանալ (*սավառնում*):

Առաջին Ճ. կառուցել և փորձարկել է ֆրանս. նավաստի Ժ. Լը Բրին 1868-ին: Նրա կատարած թռիչքների հեռավորությունը հասնում էր 30 *մ*: ՍՍՀՄ-ում ճախրաթռաշինությունը զարգացում ապրեց 20—30-ական թթ.: Կոնստրուկտորներն էին Կ. Կ. *Արցեուլովը*, Ս. Վ. *Իլյուշինը*, Ա. Ս. *Յակովլևը* և ուրիշներ:

Արդի Ճ-ները տարբերվում են ըստ տեղերի քանակի (միա-, երկ- և բազմատեղ) և նշանակման (ուսումնական, մարզական, ռեկորդային): Գոյություն ունի Ճ-ի արձակման երեք եղանակ. բուքսիրման միջոցով (ավտոմեքենայով, մոտոցիկլետով, ինքնաթիռով), ներքին այրման շարժիչին միացված կարապիկով կամ ձեռքով ձգվող ռետինե լարի օգնությամբ: 1960-ական թթ. տարածում գտան շարժիչավոր Ճ-ները՝ մոտոճախրաթիռները, որոնք կատարում են ինքնուրույն վերսլացք:

**ՃԱԿԱՏ**, շենքի կամ կառույցի արտաքին կողմը: Տարբերակվում են գլխավոր, կողային, դեպի փողոց կամ բակ նայող են Ճ-ներ: Ճ-ի համամասնությունները, մասնատումները և հարդարանքը սովորաբար պայմանավորված են կառույցի նշանակությամբ, նրա ոճական, տարածական և կոնստրուկտիվ լուծումների յուրահատկություններով: Ժամանակակից, հատկապես մասսայական ինդուստրիալ շինարարությունում, երբ կառույցները շրջապատված են լայնարձակ տարածություններով, շենքի բոլոր Ճ-ները ունեն հավասարազոր կարևոր նշանակություն:

**ՃԱԿԱՏԱԳԻՐ**, ոչ գիտական ըմբռնմամբ առասպելաբանության և իռացիոնալիստական փիլիսոփայության մեջ դեպքերի, անհատների և ամբողջ ժողովուրդների ապագայի կանխորոշվածություն: Ճ. ընկալվում է իբրև անխուսափելիություն. այն իր բնությամբ ինքնին «կույր» է և «մութ»: Ճ. կարելի է միայն գուշակել (միստիկական միջոցներով՝ աստղագուշակություն, հմայություններ են), բայց ոչ ճանաչել: Ճ-ի ըմբռնումը կապված է նաև խիստ *դետերմինիզմի* հետ (տես *Ֆատալիզմ*): Ճ-ի խաղի մեջ իմաստ և նպատակ չկա (դրանով այն տարբերվում է *տելեոլոգիայից*), և անխուսափելի է (հետևաբար՝ ազատության հակոտնյան է):

Ճ. ընկալվում է կամ իբրև դրսից (բնություն, հասարակություն) անհատին պարտադրվող ուժ, կամ՝ անհատի կենսաֆիզիկական հատկություններով, նրա ժառանգականությամբ պայմանավորված անխուսափելիություն: Այսպես, ըստ ավանդության մարդու գանգի կարանը (ճակատի գիրը) մարդու համար նախախնամության կանխորոշած ուղին է:

Հունա-հռոմեական մտածողությունը և գեղարվեստական գրականությունը (Հոմերոս, Էսքիլես, Եվրիպիդես) ներծծված են Ճ-ի ըմբռնումով: Նույնիսկ աստվածները ենթակա են Ճ-ին: Եթե հունա-հռոմեական դիցաբանության մեջ Ճ. անձնավորված էր (Մոյրաներ, Պարկաներ), անհատից օտարված, ապա հայերի աշխարհընկալմամբ Ճ. ուներ անձնական-անհատական բնույթ, ծագում է անհատից և անձնավորված չէ (Եզնիկ Կողբացի): Ճ. սովորաբար դիտվում է որպես չար ուժերի ներգործություն: Երբեմն Ճ. նույնացվում է *բախտին*, մինչդեռ բախտը ենթադրում է նաև երջանիկ վախճան: Աշխարհում իշխող մութ և չար ուժերի կողքին տեղ է տրվում նաև լույսին և բարուն, թեև վերջիններս թեական են, պատահական:

Քրիստոնեությունը Ճ. մերժում է, որովհետև ընդունվում է զղջալու և քավության միջոցով անխուսափելիից ազատվելը և փրկությանը հասնելը: Հայ եկեղեցին դատապարտել է հեթանոսության շրջանից ժողովրդի մեջ պահպանված Ճ-ի պատկերացումը, որն ընդունում է միստիկական միջոցներով դեպքերի, իրադարձությունների վրա ազդելու հնարավորություն:

Իռացիոնալիստական փիլիսոփայության մեջ (Ֆ. Նիցշե, կյանքի փիլիսոփայություն, Օ. Շպենգլեր) Ճ. կապվում է մարդկային գոյության անիմաստության, հասարակական և մարդկային հարաբերությունների իռացիոնալության և անհատի լքվածության հետ: Այսպիսով, Ճ. ստանում է ընդգծված սոցիալական բընույթ, դառնում է կապիտալիստական հասարակության ճգնաժամի արտահայտություններից:

*Լ. Խաչատրյան*

**ՃԱԿԱՏԱՄԱՐՏ**, պատերազմող կողմերի գլխավոր ուժերի վճռական բախում: Անցյալում (մինչև XIX դ.) ռազմ. գործողությունները տեղի էին ունենում սահմանափակ տարածքների վրա, և հաճախ մի Ճ-ի ելքից էր կախված ոչ միայն բանակի, այլև պետության ճակատագիրը (օրինակ, *Ավարայրի ճակատամարտ 451*, *Կուլիկովյան ճակատամարտ 1380*, *Պոլտավայի ճակատամարտ 1709* են): Նոր ժամանակներում, երբ բախվում են զորային մեծ խմբավորումներ ու մեծ տարածքների վրա, «Ճ.» հասկացությունն օգտագործվում է մի շարք *մարտերի* ու հարվածների հավաքական իմաստով: Խոշոր ռազմ. կամպանիաների, երբեմն նաև պատերազմների ելքը վճռող Ճ-երը (օրինակ, *Աուստերլիցի ճակատամարտ 1805*) կոչվում են գլխավոր Ճ.: XIX դ. կեսից Ճ-ին որպես հոմանիշ է օգտագործվում նաև *օպերացիան*:

Ճ-երը մղվում են ցամաքում, օդում և ծովում: Լինում են հարձակողական (երբ գործող զորամասերը կատարելով առաջադրված խնդիրը, հակառակորդից գրավում կամ ազատագրում են տարածքներ), պաշտպանական (երբ ձգտում են պահպանել գրաված դիրքերը, մեծ վնասներ պատճառելով հակառակորդին) և հանդիպական (երբ հետապնդում են նահանջող հակառակորդին, եւ մղում հակագրոհը են):

1941—45-ի Հայրենական մեծ պատերազմում ֆաշիստական Գերմանիայի դեմ ՍՍՀՄ հաղթանակի գործում կարևորագույն դեր խաղացին մի շարք Ճ-եր՝ *Մոսկվայի ճակատամարտ 1941—42*, *Լենինգրադի ճակատամարտ 1941—44*, *Կովկասի ճակատամարտ 1942—43*, *Ստալինգրադի ճակատամարտ 1942—43*, *Կուրսկի ճակատամարտ 1943* են:

*Մ. Կարապետյան*

**ՃԱԿԱՏԱՅԻՆ ԴԻՄԱԴՐՈՒԹՅՈՒՆ**, տես *Աերոդինամիկ դիմադրություն*:

**ՃԱԿԱՏԱՅԻՆ ԾՈՑԻ ԲՈՐԲՈՔՈՒՄ**, ֆրոնտիտ, ճակատոսկրի օդակիր խոռոչի բորբոքային հիվանդություն: Հաճախ վարակիչ հիվանդությունների բարդություն է: Քրոնիկական ֆրոնտիտը կըրկնվող և չբուժված սուր բորբոքումների հետևանք է: Սուր բորբոքման ախտանշաններն են՝ գլխացավ, ճակատային ծոցի շրջանի ցավեր, հատկապես ճնշելիս, արցունքահոսություն համապատասխան կողմի աչքից: Հնարավոր է կոպերի այտուց, բարձր ջերմություն, ընդհանուր թուլություն: Քրոնիկական ընթացքի ժամանակ ախտանշանները թույլ են արտահայտվում, կոմբինացվում են ցանցաձև լաբիրինթոսի բջիջների ախտահարման հետ, որի հետևանքով առաջանում են *պոլիպներ*: Բուժումը. սուր ֆրոնտիտի դեպքում կոնսերվատիվ է. քթի միջին անցուղուն քսում են 2—3% կոկաինի լուծույթ՝ ադրենալինի հետ, միաժամանակ՝ ընդհանուր հակաբորբոքային դեղամիջոցներ (անտիբիոտիկներ, ցավազրկողներ): Քրոնիկական ընթացքի դեպքում՝ վիրաբուժական միջամտություն:

**ՃԱԿԱՏԱՆՈՑ**, ճ ա կ ա ն ո ց, կանացի զարդ, գլխի հարդարանքի մաս: Գործածվում էր ավանդական տարազի համալիրներում՝ մինչև XX դ. սկիզբը (այժմ հանդիպում է միայն Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Հադրութի շրջանի տարեց կանանց մոտ): Կրում էին ամուսնացած կանայք: Լինում էր տարբեր ձևի: Բարձր Հայքում Ճ. թավշապատ էր, զարդարվում էր գունավոր թելերով, ասեղնակար (մանուշակի, նարգիզի և այլ ծաղիկների ու տերևների պատկերներ) ժանյակով. հարուստ խավի կանանց մոտ՝ ոսկյա ծաղկաձև և տերևաձև թերթիկներով, մարգարիտներով: Ավելի տարածված էր դրամաշարով Ճ., որն աղջիկները նշանդրեքի օրը ստանում էին փեսայի



Ճակատանոց, արծաթ (Վասպուրական, XIX դ., Հայաստանի պատմության պետական թանգարան, Երևան)

մորից՝ իբրև նվեր: Վասպուրականում Ճ. (մախչա) պատրաստվում էր արծաթից՝ զուգաթելի, դրվագման եղանակներով, բաղկացած էր նշաձև, լուսնաձև զարդերով, գունավոր ակներով, մարջանե կախիկներով յոթ տախտակներից: Գոտին զավառում Ճ. բարձրադիր էր, ասեղնագործվում էր ոսկեթելով (բուսական զարդանախշեր), եզրին ամրացվում էր երեքական փոքր տախտակներից կազմված կախիկների շարան, յուրաքանչյուրի ծայրին՝ կարմիր ակներով երեքական գնդաձև զարդեր:

*Ն. Ավագյան*

**ՃԱԿԱՏԵՆ**, գյուղ Հայկական ՍՍՀ Ղափանի շրջանում, շրջկենտրոնից 6 *կմ* հարավ-արևելք: Կոլտնտեսությունն զբաղվում է անասնապահությամբ, ծխախոտի, հացահատիկի և կերային կուլտուրաների



Ճակատեն

մշակությամբ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, բուժկայան: Գյուղի շրջակայքում պահպանվել են եկեղեցի (X դ.), մատուռներ, կամուրջ (XVII դ.):

**ՃԱԿԱՏՔ**, գավառ Մեծ Հայքի Այրարատ նահանգում: Տարածվում էր Հայկական պար լեռնաշղթայի և Երասխ գետի միջև, վերջինիս Վարդամարգ և Ազարակ վտակների ավազանում: Հս-արմ-ից և հս-արլ-ից Երասխով սահմանակից էր Արշարունիք և Արագածոտն, հվ-արմ-ից և հվ-արլ-ից (Հայկական պարով)՝ Բագրևանդ և Կոգովիտ, արլ-ից՝ Մասյացոտն գավառներին: Ճ-ի հվ. և արմ. մասերը լեռնոտ են, կենտրոնական մասում բարձրանում են Բարդող և Փարլու (Փերլու) լեռնազագաթները: Հս-ը (Երասխի աջափնյակը) հարթավայրային է, հողը՝ բերրի և այգեվետ: Կլիման ցամաքային է: Ոռոգվում է Վարդամարգ, Ազարակ, Թանդուրեկ, Թեղեկճի և այլ գետերի, ինչպես նաև Հայկական պարի վրա գոյացած մանր լճակների ջրերով: Ունի քարածխի և հատկապես աղի հարուստ պաշարներ: Կողբի կերակրի բարձրորակ աղահանքը շահագործվել է հնագույն ժամանակներից և առ այսօր պահպանում է իր արդ. նշանակությունը:

Արշակունիների և Բագրատունիների թագավորության ժամանակներում Ճ. մտել է արքունի տիրույթների մեջ: XIII դ. սկզբին ազատագրվել է սելջուկյան թուրքերից և անցել Զաքարյաններին: Ճ-ի բազմաթիվ բնակավայրեր կործանվել են Լենկթեմուրի արշավանքների (1387 և 1393) հետևանքով:

XV դ. Ճ. տրոհված էր երկու վիճակի՝ Կողբի և Սուրմառու (համանուն կենտրոնների անունով): XVI—XVIII դդ.՝ պարսկ. տիրապետության ներքո, Սուրմառին կազմում էր Երևանի խանության Սուրմալու մահալը, իսկ Կողբը մտնում էր նույն խանության Սառդլի մահալի մեջ: Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացվելուց հետո Ճ. Մասյացոտնի արլ. մասի հետ կազմում էր Սուրմառի(Սուրմալու) գավառը և բաժանվում էր երկու վիճակի՝ Սուրմառու (50 գյուղով) և Չորագյուղ-Բարչենիս (54 գյուղով):

*Գրկ.* Ա լ ի շ ա ն Ղ., Այրարատ, Վնտ., 1890: Հ ա կ ո բ յ ա ն Թ. Խ., Հայաստանի պատմական աշխարհագրություն, Ե., 1968:

*Թ. Հակոբյան*

**ՃԱԿՆԴԵՂ** (Beta), թելուկազգիների ընտանիքի միամյա, երկամյա և բազմամյա բույսերի ցեղ: Հայտնի է 13 տեսակ (11 վայրի և 2 մշակովի), ՍՍՀՄ-ում՝ 5-ը (այդ թվում 2 մշակովի): Վայրի տեսակների տարածման արեալներն են՝ Միջերկրածովյան ծովափը, Առաջավոր Ասիան, Անդրկովկասը, Ղրիմը, Բալկանները, Արևելքում հասնում են մինչև Հնդկաստան, Արևմուտքում՝ Ֆրանսիայի, Մեծ Բրիտանիայի, Սկանդինավիայի առափնյա շրջանները: Մշակովի տեսակներն են՝ երկամյա տ ե ր և ա յ ի ն Ճ. կամ մ ա ն գ ո լ դ ը (B. cicla) և ս ո վ ո ր ա կ ա ն Ճ. (B. vulgaris), որը ստորաբաժանվում է եվրոպական (սեղանի, կերի և շաքարի Ճ-ի տարատեսակների խմբեր) և ասիական (թույլ զարգացած արմատապտուղով նվազ կուլտուրական տարատեսակների խմբեր) ենթատեսակների:

Ս ե ղ ա ն ի, կ ա ր մ ի ր, բ ա ն ջ ա ր ի Ճ. անման առաջին տարում առաջացնում է 0,4—0,9 *կգ* զանգվածով, գնդաձևվաձև արմատապտուղ, ունի մուգ կարմիր, կարմիր-մանուշակագույն միջուկ և կարմիր ջղերով կանաչ կամ կարմիր տերևներով վարդակ: Սննդի մեջ օգտագործում են արմատապտուղը (պարունակում է 13—20% չոր նյութեր, այդ թվում՝ 9—16% շաքար, 1,8—3% սպիտակուց, մինչև 0,5% օրգ. թթուներ, 0,7—1,4% թաղանթանյութ, 0,8—1,3% հանքային աղեր, C, B, PP խմբի վիտամիններ) և մատղաշ բույսերը. Տարածված է բոլոր մայր ցամաքներում: ՍՍՀՄ-ում մշակվում է երկրագործական բոլոր գոտիներում (1977-ին մոտ 60 հզ. *հա*):

Կ ե ր ի Ճ. կյանքի առաջին տարում առաջացնում է խոշոր (մինչև 10—12 *կգ*), տարբեր ձևի և գույնի արմատապտուղ ու կանաչ տերևներով վարդակ: Օգտագործվում է որպես հյութալի կեր (տերևները նաև սիլոսացնում են): 100 *կգ* արմատապտուղը պարունակում է 12,2 կերի միավոր և 0,9 *կգ* մարսելի սպիտակուց, իսկ 100 *կգ* տերևները՝ համապատասխանաբար 10,2 և 1,8 *կգ*: Արմատապտուղների միջին բերքատվությունը 300—400 *ց/հա* է: Մշակվում է Ուկրաինայում, ՌՍՖՍՀ ոչ սևահողային գոտում, Պովոլժիեում, Բելոռուսիայում, Լիտվայում:

Շ ա ք ա ր ի Ճ., ցանքի տարում զարգանում է շաքարով (մինչև 19%) հարուստ, սպիտակ միջուկով արմատապտուղը (300—600 *ց*) և սպիտակ-կանաչ տերևների վարդակը: Ծաղիկները հնգատիպ են, երկսեռ, խումբ-խումբ նստած տերևածոցերում՝ ցողունի ամբողջ երկարությամբ: Պտուղը ընկուզիկ է, հասունանալիս ընկուզիկները սերտաճում են ու վերածվում պտղաբույլի՝ կնձիկի (յուրաքանչյուրում՝ 2—6 սերմ): Ջերմասեր, լուսասեր, խոնավասեր, աղադիմացկուն, երաշտադիմացկուն *շաքարի արդյունաբերության* հումքով ապահովող, կարևորագույն տեխ. բույս է: Թափոնները՝ մզուկը և մաթն, արժեքավոր կերեր են: Աշխարհում շաքարի Ճ-ի ցանքատարածությունը 9,38 մլն *հա* է (1976): Մշակվում է գլխավորապես եվրոպական երկրներում (ՍՍՀՄ, Լեհաստան, ԳԴՀ, ԳՖՀ, Չեխոսլովակիա, Ֆրանսիա, Անգլիա, Իտալիա, Հունգարիա, Բելգիա են): ՍՍՀՄ-ում գործարանային շաքարի Ճ-ի ցանքատարածությունը կազմում է 3,76 մլն *հա* (1978):

ՀՍՍՀ-ում շաքարի Ճ-ի մշակումն սկսվել է Շիրակի ջրանցքի շահագործումից հետո, Ախուրյանի, Սպիտակի, Արթիկի, Ամասիայի շրջաններում: Արտադրանքը վերամշակվում է Սպիտակի շաքարի գործարանում: ՀՍՍՀ-ում շրջանացված են Ռամոնսկայա-931, Վերխնյաչեսկայա-038, Պերվոմայսկի պոլիհիբրիդ-10 են: Շաքարի Ճ-ի համար լավ նախորդներ են հատիկաընդեղեն ու շարահերկ գյուղատնտ. բույսերը, աշնանացան ցորենը: Նախորդող բույսերի բերքահավաքից հետո կատարվում է երեսվար, ապա 27—30 *սմ* խորությամբ ցրտահերկ, վաղ գարնանը՝ փոցխում, իսկ ցանքից առաջ՝ 6—12 *սմ* խորությամբ կուլտիվացում: Ցանքի նորման բազմասերմ կնձիկների դեպքում՝ 25—28 *կգ/հա*, միասերմի դեպքում՝ 15—18 *կգ/հա*: ՀՍՍՀ-ում Ճ-ի բերքը հավաքում են սեպտ. 25-ից մինչև հոկտ. 15-ը: 1978-ին ՀՍՍՀ-ում գործարանային Ճ-ի ցանքատարածությունը 4,6 հզ. *հա* էր:

**ՃԱԿՆԴԵՂԱՀԱՎԱՔ ԿՈՄԲԱՅՆ**, շաքարի ճակնդեղի բերքը հավաքող մեքենա, հողից հանում է արմատները (պալարները), կտրում փրերը, դրանք զետեղում բունկերի մեջ, կամ արմատները բարձում կողքից ընթացող մեքենայի թափքի, իսկ փրերը՝ տրակտորային բեռնասայլակի վրա: ՍՍՀՄ-ում արտադրվում է 2 տեսակի Ճ. կ.

1. արմատահաններ (ԿՄՏ-3Ա, ԿՄՏ-2Ա, ՍԿԴ-2, ՍԿՆ-2Ա ևն), որոնք սկզբում հանում են արմատները և ապա մեքենայի վրա կտրում փրերը, կամ կտրում են փրերը ու հողից հանում արմատները: 2. ԿՄՏ-3Ա կցովի եռշարք արմատահան կոմբայն, որը գործածվում է հոսքային կամ փոխաբեռնումով բերքահավաքի ժամանակ: Ճ. կ-ներն ունեն փրակտրիչներ, փրերը ընդունող փոխարկիչ, սկավառակաձև հողափոր հարմարանք, արմատամաքրիչներ, փրերի և արմատների ամբարձիչ-փոխադրիչներ (էլևատորներ), փրերի բունկեր, ավտոմատ և ձեռքի կանոնավորիչ:

**ՃԱԿՏՈՆ**, ֆրոնտոն (ֆրանս. fronton, <լատ. frons, frontis—ճակատ, առջևի կողմը), շենքի, սյունասրահի, սյունաշարի ճակատը պսակող, քիվով և երկլանջ տանիքով երիզված եռանկյունաձև ավարտը:

Աթենաս-Աֆայայի տաճարի (Էգինա կղզի, մ. թ. ա. մոտ 500—480) արևմտյան ճակտոնը (ընդհանուր հորինվածքի վերակազմություն), մարմար

Հայկ. ճարտ. հուշարձաններից Ճ. ունեն Գառնիի տաճարը, (մ. թ. I դ.), Քասաղի (IV դ.), Աշտարակի Ծիրանավոր (V դ.) եռանավ բազիլիկները, Տեկորի գմբեթավոր բազիլիկը (V դ.), Լեռնակերտի (IV դ.), Կուրթանի, Գյուլագարակի (VI դ.) միանավ եկեղեցիները ևն:

**ՃԱԿՏՈՆԱԶԱՐԴ**, ակրոտեր (հուն. ἀκρωτήριον—գագաթ), քանդակային հարդարանք (արձան, *արմավիկ*) ճարտարապետական դասական օրդերով կառուցված շենքի *ճակտոնի* անկյուններում, տանիքի վրա:

**ՃԱԿՏՈՆԱՊԱՏ**, տիմպան (τύμπανον), 1. ճակտոնի եռանկյունաձև հարթությունը: 2. Դռան կամ լուսամուտի վերևի կիսաշրջանաձև, եռանկյունաձև կամ պայտաձև պատը: Այն հաճախ լինում է քանդակազարդ, որի լավագույն օրինակներից են Հայաստանում՝ Ամաղուի Նորավանքի, Սպիտակավոր Աստվածածին և Հովհաննես Կարապետ վանքերի, Արենիի XIII—XIV դդ. եկեղեցիների Ճ-երը (տես նաև *Բարավոր*): *Մ. Հասրաթյան*

**ՃԱԿՔ**, գավառ Մեծ Հայքի Տայք նահանգում: Տեղադրությունը ստույգ չէ: Որոշ ուսումնասիրողներ տեղադրում են Բոխա և Ճորոխ գետերի եռանկյունում, որտեղ գտնվում էին Մամիկոնյան նախարարությանը պատկանող Իշխանաց գյուղը, Էրախանի և Տայոց քար ամրոցները: Այդ շրջանը հետագայում կոչվում էր Իշխանանիստ ձոր:

*Գրկ.* Երեմյան Ս. Տ., Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, Ե., 1963:

**ՃԱՀԻՃ**, ավելցուկային խոնավությամբ, խոնավասեր բույսերով՝ ծածկված ցամաքի տեղամաս: Նեղ իմաստով՝ ավելցուկային խոնավությամբ, 30 *սմ*-ից ոչ պակաս հզորության տորֆաշերտ ունեցող ցամաքի տեղամաս: Տորֆաշերտի պակաս հզորության կամ լրիվ բացակայության դեպքում, ավելցուկային խոնավությամբ տեղամասերը կոչվում են ճահճային հողեր: Ճ-ներն առաջանում են ջրավազանների բուսակալման կամ գետնի վրա ջրերի լճացման (երբ ստորգետնյա ջրերի մակարդակը մոտենում է երկրի մակերևույթին) ճանապարհով: Ճ-ում դժվար գազափոխանակության պատճառով օրգ. նյութերը դանդաղ են քայքայվում, հողում հումուս չի կուտակվում և դժվարանում է բուսականության զարգացումը: Տարբերում են ցածրադիր (էվտրոֆային), բարձրադիր (օլիգոտրոֆային) և անցումային (մեզոտրոֆային) Ճ-ներ: Ճ-ում տորֆի միջին աճը 1000 տարվա ընթացքում մոտ 1 *մ* է: Ճ-ների ընդհանուր տարածությունը 350 մլն *հա* է: Ճ-ներն առավել տարածված են Հյուսիսային կիսագնդի բարեխառն գոտու անտառային զոնայում: Հայկական ՍՍՀ-ում տարածված են Կալինինոյի, Մարտունու և Վարդենիսի շրջաններում:

Ճ-ներն ունեն ժող. տնտ. մեծ նշանակություն: Դրանցից ստացված տորֆն օգտագործվում է որպես վառելանյութ, պարարտանյութ, ջերմամեկուսիչ, կամ ստանում են արժեքավոր քիմ. նյութեր (տես *Տորֆային հողեր*): ՍՍՀՄ-ում մեծ աշխատանքներ են կատարվում Ճ-ների չորացման ուղղությամբ (Պոլեսիե, Մեշչորա, Կոլխիդա): Չորացված Ճ-ներն օգտագործվում են որպես վարելահողեր, խոտհարքներ, արոտավայրեր:

**«ՃԱՀԻՃ»**, Ֆրանսիական մեծ հեղափոխության ժամանակաշրջանում *Կոնվենտի* դեպուտատների մի խմբի (որոնք մեծամասնություն էին կազմում) ժամանակակիցներից տրված անվանումը: «Ճ.», որի նշանավոր ներկայացուցիչներն էին Սիեյեսը, Բարասը, չէր հարում քաղ. որևէ խմբավորման, բայց գնում էր նրա ետևից, ով տվյալ պահին ուժեղ էր: Սկզբում «Ճ.» հարում էր *ժիրոնդիստներին*, այնուհետև՝ *յակոբինյաններին*, վերջիններիս պառակտման շրջանում (1794-ի մարտ)՝ ռոբեսպիերականներին (տես *Ռոբեսպիեր* Մ.): Տերմիդորյան հեղաշրջման ժամանակ (1794-ի հուլիս) «Ճ.» անցավ հակահեղափոխական դավադիրների կողմը:

Հետագայում «Ճ.» անվանումը տրվել է քաղ. այն խմբավորումներին, որոնք տատանվել են կամ անվճռական եղել, խուսափել պայքարից:

**ՃԱՀՃԱԳԱԶ**, տես *Մեթան*:

**ՃԱՀՃԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ**, ուսմունք *ճահիճների* մասին: Հենվում է երկրաբուսաբանական (ճահճի բուսածածկույթ), հողագիտական (ճահճային հողագոյացման պրոցես և ճահճային հողեր), հիդրոլոգիական (ճահճի ջրափոխանակություն, քիմ. կազմը ևն) և երկրաբանական (տորֆը որպես նստվածքային ապար) հետազոտությունների արդյունքների վրա: Ճ. նշանակություն ունի տորֆի արդ. մշակման, գյուղատնտ. և այլ նպատակներով ճահիճների չորացման համար:

**ՃԱՀՃԱԿՈՒՂԲ** (Myocastor coypus), նուտրիա, կրծողների կարգի կաթնասուն կենդանի: Նման է մեծ առնետի, մարմնի երկարությունը՝ մինչև 85 *սմ*, պոչինը՝ 45 *սմ*, քաշը՝ 12 *կգ*: Շուրթերը պինդ փակվում են կտրիչների ետևում, որը թույլ է տալիս Ճ-ին սնվել ջրի տակ: Ետին վերջավորությունների մատները միացած են թաղանթով: Հայրենիքը Հարավային Ամերիկան է: Բնադրում է գետերի, լճերի, ճահիճների ափերին, վարում կիսաջրային կյանք: Լավ լողում է, սնվում է մերձափնյա և ջրային բուսականությամբ, որոշ փափկամորթներով: Բազմանում է կլոր տարին. էգը ծնում է 1—12 ձագ: Մորթին թանկարժեք է, ծածկված երկար, կոպիտ քիստերից, որը մշակելիս հեռացվում է, և կարճ, նուրբ, դարչնագույն ենթաբրդից: Ճ. կլիմայավարժեցվում է բազմաթիվ երկրներում, պահվում վանդակներում: ՀՍՍՀ-ում Ճ. բուծվում է Ակնալճի կուղբաբուծական տնտեսությունում:

**ՃԱՀՃԱՅԻՆ ՀԱՆՔԱՆՅՈՒԹԵՐ**, հանքանյութեր, որոնք գոյացել են ճահիճների հատակին երկաթի օքսիդների և հիդրօքսիդների նստեցման ճանապարհով: Ճ. հ. առաջացնում են կոնկրեցիաներ, կարծր կեղևիկներ և շերտեր:

**ՃԱՀՃԱՏԵՆԴ**, տես *Մալարիա*:

**ՃԱՀՈՒԿ**, Ջահուկ, գավառ Մեծ Հայքի Սյունիք նահանգում, Նախճավան գետի Ճահուկ (այժմ՝ Ջահրի) և Շահապոնք (այժմ՝ Շահբուզ) վտակների ավազաններում: Հս-ից և հս-արլ-ից սահմանակից էր Վայոց ձոր և Ծղուկ, հվ-արլ-ից և հվ-ից՝ Երնջակ և Նախճավան, արմ-ից՝ Այրարատի Շարուր գավառներին: Կազմված էր Ճահուկ և Շահապոնք վիճակներից՝ համանուն կենտրոններով: Մակերևույթը լեռնադաշտային է, զգալիորեն անտառավետ, կլիման՝ ցամաքային, հողը՝ բերրի: Արշակունիների ժամանակ (I—V դդ.) Ճ. եղել է Շահապունիք իշխանական տան (հիշատակվում է Ներսիսյան Գահնամակում) ժառանգական տիրույթը: VI դ. Ճ. հիշատակվում է որպես բյուզանդական և պարսկ. նվաճողների դեմ պայքարող հայկ. ուժերի զորաճամբար: X դ. Ճ. մտնում էր Սյունյաց գահերեց իշխան Սմբատի տիրույթների մեջ: Սյունյաց իշխանության քաղ. դերի նվազումից հետո, XII դ., Ճ. անցնում է Համտունյաց իշխանությանը (Ջուրջ և Խոսրովիկ Համտունյանները թաղվել են Ճ. ավանում): Համտունյաց տոհմի սպառումից հետո Ճ. անցնում է Օրբելյան իշխան Ելիկումին, այնուհետև՝ Պռոշյաններին: Ճահուկ ավանի Ս. Աստվածածին վանքը XIV—XVIII դդ. եղել է ունիթոռների միաբանության կենտրոն: XVI—XVIII դդ. Ճ. Նախիջևանի խանության կազմում էր և կոչվում էր Ջահրի: XIX դ. 2-րդ կեսից Ճ. մտնում էր Երևանի նահանգի Նախիջևանի գավառի մեջ: Այժմ կազմում է Նախիջևանի ԻՍՍՀ Շահբուզի շրջանը:

Տաթևի վանքի միջնադարյան հարկացուցակում Ճ-ում հիշատակվում է 48 բնակավայր. Ճահուկ, Աղբերխաչ, Խախ, Կարմիր եկեղեցի, Որդոք, Բլուր, Պահեստ, Դաբեն, Բզղոն, Նորագյուղ, Ընչակերտ, Գուքի, Խոռատունիք (Խռատափք), Սիզեն, Գեհենիք, Արմավաշեն, Սաղուասոնք (Սաղսոնք), Զաղա, Հեծանա, Թամամշաղ (Թամաղաչ), Ոփիք, Նորագյուղ մյուս, Թաթերք, Շամեն (Շավին), Նորբերդ, Ակոռի (Ակուռի), Եզատունիք, Ագարակ, Դալարինք, Քրոն, Քույք, Խոռունիք, Դրախտիկ, Տավալք, Աղու, Գայլակալ, Ջուր,

Ոլենի, Բաքունք (Բաքանք), Տախտակք, Արկուգետ (Արգագետ), Անուշավանք, Աղդավ, Նորաշինիկ, Շմրքայի (Շոմրքայի), Արքույքա, Վասակակերտ (Վասակերտ), Ավերակք: Այլ ձեռագրերում հիշատակվում են նաև Շահապոնք ավանը, Օծոփ և Ցեցիկ գյուղերը:

*Գրկ.* Ստեփանոս Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, Թ., 1910: Ալիշան Ղ., Սիսական, Վնտ., 1893: Հակոբյան Թ. Խ., Հայաստանի պատմական աշխարհագրություն, Ե., 1968: Այվազյան Ա., Նախիջևանի պատմա-ճարտարապետական հուշարձանները, Ե., 1978:

*Թ. Հակոբյան*

**ՃԱՂԱՏՈՒԹՅՈՒՆ**, գլխի մազածածկ մասի մասնակի կամ լրիվ մազաթափություն՝ մազերի ատիճանական ու հարաճուն բարակելու (ապաճելու), թափվելու և նոր մազերի աճման դանդաղեցման հետևանքով: Պատճառներն են՝ ներզատիչ գեղձերի գործունեության խանգարումները, օրգանիզմի ժառանգական նախատրամադրվածությունը, կրած հիվանդությունները ևն: Լինում է բնածին, ծերունական (տարիքային) և վաղաժամ (երիտասարդական): Բնածին Ճ-յան դեպքում երեխան ծնվում է առանց հոնքերի և արտևանունքների, գլխի վրա լինում են միայն աղվամազեր: Վիճակը կարող է նորմալանալ սեռական հասունացման շրջանում, երբեմն՝ ավելի ուշ: Ծերունական Ճ. զարգանում է տարեց մարդկանց մոտ (55—60 տարեկան) նախապես սպիտակած մազերի ապաճման, բարակելու, դրանք աղվամազերով փոխարինվելու և թափվելու հետևանքով: Մեծ մասամբ նկատվում է ճակատի ու գագաթի շրջանում: Վաղաժամ Ճ. բնորոշ է երիտասարդ և միջին տարիքի տղամարդկանց: Ճ-յան վերջին երկու ձևերն ընթանում են առանց մաշկի փոփոխությունների: Տարեց կանանց մոտ նկատվում է միայն մազերի տարածուն բնույթի նոսրացում: Գոյություն ունի նաև վաղաժամ Ճ-յան յուրահատուկ ձև, որի պատճառը սեբոռեա (ճարպահոսություն) հիվանդությունն է: Ուղեկցվում է գլխի մաշկի թեփոտումով, կարմրությամբ, քորով: Բուժումը. վիտամիններ A, $B_1$, $B_6$, ֆուրոկումարինի շարքի պատրաստուկներ (պեուցեդանին, բերոքսան, ամիֆուրին)՝ ուլտրամանուշակագույն ճառագայթների զուգակցմամբ, հորմոնային միջոցներ: Տեղական՝ պատիճավոր պղպեղի և փռշխոնկույզի (ստրիխնին) թուրմի քսուքներ, ֆիզիոթերապևտիկ պրոցեդուրներ, մերսում:

*Է. Դանիելյան*

**ՃԱՂԱՐՅԱՆ** Անդրանիկ Ջումշուդի [ծն. 12.5.1916, գ. Դաշբուլաղ (այժմ՝ ԼՂԻՄ Ասկերանի շրջանում)], հայ սովետական վիրաբույժ, անատոմ, մարդաբան: Բժշկ. գիտ. դ-ր (1957), պրոֆեսոր (1960), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1963): 1938-ին ավարտել է Երևանի բժշկ. ինստ-ը: Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: Սրտաբանության և սրտային վիրաբուժության ինստ-ի կազմակերպիչներից է, 1957—1960-ին եղել է նույն ինստ-ի սրտային վիրաբուժության բաժանմունքի վարիչ (1958-ին կատարել է սրտի արատի առաջին վիրահատությունը Հայաստանում): 1960-ից Երևանի բժշկ. ինստ-ի օպերատիվ վիրաբուժության և տեղագրական անա-



Ա. Ջ. Ճաղարյան

տոմիայի ամբիոնի վարիչ է: Գիտական աշխատանքները վերաբերում են սրտի արատների վիրաբուժության, թոքային գերարյունության, աորտայի բնածին նեղացման, սրտի պսակաձև անոթների անբավարարության հարցերին: Օժտված լինելով կերպարվեստագետի արտակարգ ձիրքով՝ նա ինքն է ստեղծել իր գրքերի բոլոր գունավոր աղյուսակները: Ճ. մշակել է դեմքի պլաստիկ վերականգնման մեթոդ: 1970-ին ՀՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստ-ին կից հիմնել է մարդաբանության լաբորատորիա, 1978-ին՝ ՀՍՍՀ ազգագրության թանգարանում (Սարդարապատ)՝ բրոնզեդարյան մարդկանց գանգերի հիման վրա վերականգնըված դիմաքանդակների պատկերասրահ: Վերականգնել է բանաստեղծ Պետրոս Դուրյանի դեմքը (1972), խուռիական (բրոնզեդարյան), ուրարտական և Շենգավիթի 6000 տարվա բնիկների դեմքերը:





Դեմքերի վերականգնումը ըստ Ա. Ճաղարյանի. 1. Պետրոս Դուրյան, 2. Սյունիքի թագավոր Գրիգոր I (XI դ.)

Այդ դիմաքանդակներից մի քանիսը դարձել են Նոր Զելանդիայի և Լիբանանի ազգային թանգարանների սեփականությունը: Ճ. ԱՄՆ-ի հայ մասնագետների միության անդամ է (1967): Համաշխարհային «Գրանդ պրի» (Բրյուսել, 1958) և ՍՍՀՄ ԲԳԱ Ն. Ն. Բուրդենկոյի անվ. մրցանակների դափնեկիր է:

*Երկ.* Օպերատիվ վիրաբուժություն և տեղագրական անատոմիա, Ե., 1969: Պետրոս Դուրյան: Դեմքի վերականգնումը, Ե., 1972: Атлас врожденных пороков сердца и магистральных сосудов, М., 1957. Атлас хирургии сердца, Е., 1961; Атлас ангиокардиографии (соавторы Вишневский А. А., Мазаев П. Н.), Е., 1963.

**ՃԱՃԱՆՉ-ԴԱՍՏԱԿԱՅԻՆ ՀՈԴ** (articulatio radiocarpea), մարդու նախաբազուկը ձեռքի հետ միացնող շարժուն միացում: Բարդ հոդ է, կազմված է ճաճանչոսկրից և դաստակի մոտակա շարքի առաջին երեք ոսկրերից: Հոդափոսը կազմում են ճաճանչի ստորին ծայրը՝ աճառածածկ, գոգ, դաստակային հոդամակերեսով և ներդաճառային եռանկյուն սկավառակը, որը հիմքով ամրացած է ճաճանչի ծղիկային կտրուճի ստորին եզրին, գագաթով՝ ծղիկի ալաքաձև ելունտին: Հոդագլուխը կազմում են դաստակի մոտակա շարքի մակույկաձև, կիսալուսնաձև և եռակող ոսկրերն իրենց կորնթարդ աճառածածկ հոդամակերեսով, որոնք միմյանց հետ միացած են միջդաստակային միջոսկրյա կապաններով ու հոդերով: Ձվաձև հոդ է, լայնական առանցքի շուրջ կատարում է ծալում և տարածում, նետաձիգի շուրջ՝ զատում, առբերում: Հոդում կատարվում է նաև շրջանաձև շարժում, որի ժամանակ ձեռքի մատների ծայրերը շրջան են գծում:



**ՃԱՄԱՅԿԱ** (Jamaica), պետություն Վեստ Ինդիայում, Կարիբյան ծովի ճամայկա կղզու և հարակից մանր կղզիների վրա: Մտնում է Բրիտանական համագործակցության մեջ: Տարածությունը 11,5 հզ. կմ$^2$ է, բն.՝ 2100 հզ. (1979): Մայրաքաղաքը՝ Կինգսթոն: Վարչականորեն բաժանվում է 3 կոմսությունների:

**Պետական կարգը**: Ճ. պառլամենտական միապետություն է: Գործող սահմանադրությունն ուժի մեջ է 1962-ից: Պետության գլուխը անգլ. թագուհին է, որը նշանակում է գեներալ-նահանգապետ: Օրենսդրական իշխանությունն իրականացնում է պառլամենտը՝ կազմված գեներալ-նահանգապետից, ներկայացուցիչների պալատից ու սենատից: Ընտրական իրավունքից օգտըվում են 18 տարին լրացրած քաղաքացիները: Պրեմիեր մինիստրի գլխավորած կառավարության կազմը հաստատում է պառլամենտը:

**Բնությունը**: Տարածքի մեծ մասը զբաղեցնում է կրաքարային սարավանդը (բարձրությունը՝ 500—1000 *մ*): Արլ. մասում Բլու Մաունթին լեռներն են (մինչև 2256 *մ*): Հվ. և արմ. ափերի երկայնքով ձգվում են ալյուվիալ հարթավայրերը: Տարածված է կարստը: Հաճախակի են երկրաշարժերը: Հարուստ է բոքսիտներով (5-րդ տեղն աշխարհում): Կլիման արևադարձային պասսատային է: Հունվարի միջին ջերմաստիճանը 24—25°C է, հուլիսինը՝ 26—27°C: Տարեկան տեղումները հվ-ում 800 *մմ* են, հս-ում՝ 5000 *մմ*: Տիրապետում են լեռնային դարչնակարմիր և կարմրագորշ հողերը: Տարածված են սավաննաներն ու չորասեր անտառները: Կան նաև մշտականաչ արևադարձային անտառներ: Կենդանական աշխարհը աղքատ է (թռչուններ, մանր կրծողներ, սողուններ ևն):

**Բնակչությունը**: 90%-ը ճամայկացիներ են (գլխավորապես՝ նեգրեր ու մուլատներ): Պաշտոնական լեզուն անգլերենն է, կրոնը՝ քրիստոնեությունը, տոմարը՝ գրիգորյանը: Կարևոր քաղաքներն են Կինգս-




թոնը, Մոնտեգո Բեյը, Սպանիշ Թաունը, Մեյ Պենը:

**Պատմական ակնարկ**: Ճ-ի հնագույն բնակիչները եղել են արավակների հնդկացի ցեղերը: 1494-ին կղզին հայտնագործել է Ք. Կոլումբոսը և անվանել Սանտյագո (Ս. Հակոբ): Հետագայում կղզին անվանվել է Ճ. (հնդկացիների՝ կղզուն տված «Հայմակա»՝ «աղբյուրների կղզի», անվան աղավաղված ձևը): 1509-ից Իսպանիան սկսել է գաղութացնել Ճ.: Հնդկացիներն աստիճանաբար բնաջնջվել են (1611-ին կար 74 հնդկացի): 1513-ից սկսվել է նեգր ստրուկների ներմուծումն Աֆրիկայից: 1655-ին կղզին գրավել են անգլիացիները, 1670-ին Իսպանիան պաշտոնապես ճանաչել է Մեծ Բրիտանիայի գերիշխանությունը Ճ-ում: Ճ. դարձել է ստրկավաճառության համաշխարհային շուկաներից մեկը: XVIII դ. Ճ-ի բնակչության ճնշող մեծամասնությունը նեգրեր էին: Ստրկական դաժան շահագործման հաշվին XVIII դ. Ճ. դարձել է աշխարհի շաքարի հումքի գլխավոր մատակարարը: Ստրուկները բազմիցս ապստամբել են անգլ. իշխանությունների դեմ: Մոտ 100 տարի կղզու կենտրոնական մասում գոյություն են ունեցել մարունների (փախստական նեգր ստրուկներ և նրանց սերունդները) մի քանի անկախ համայնքներ: XVII դ. վերջին և XVIII դ. Ճ. անգլ. ծովահենների գլխավոր հենակետն էր: Հեղափոխության հաղթանակը (1804) Հայիթիում և ստրկության վերացումը Հարավային Ամերիկայում նպաստեցին Ճ-ում ստրուկների շարժման նոր վերելքին: 1838-ին վերացվեց ստրկությունը: Ազատագրված ստրուկները հեռացան պլանտացիաներից, որի հետևանքով կրկնակի կրճատվեց շաքարի արտադրությունը: Անգլ. իշխանությունները բարձրացրին նեգր բնակչությունից գանձվող հարկերը, ապա սկսեցին վտարել նրանց հողերից: Դա հանգեցրեց խոշոր ապստամբության (1865), որը դաժանորեն ճնշվեց: XIX դ. 2-րդ կեսին Ճ-ի տնտեսության մեջ մուտք գործեց ամերիկյան կապիտալը: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ազդեցության տակ Ճ-ում ծավալվեց ազգային-ազատագրական պայքար, ստեղծվեցին արհմիություններ և քաղ. կուսակցություններ: 1943-ին մտցվեց ընդհանուր ընտրական իրավունք: 1959-ին կղզուն տրվեց ներքին ինքնավարություն, ստեղծվեց Մինիստրների խորհուրդ: 1962-ին Ճ. հռչակվեց անկախ պետություն, դարձավ ՄԱԿ-ի անդամ: 1963-ին Ճ. ԱՄՆ-ի հետ կնքեց ռազմ. օգնության և տնտ. համաձայնագիր: 1972-ի ընտրություններում հաղթանակ տարավ Ժող. ազգային կուսակցությունը: Ճ. հանդես եկավ միջազգային լարվածության թուլացման և Կուբայի հետ հարաբերությունների նորմալացման օգտին: 1972-ի դեկտեմբերին դիվանագիտական հարաբերություններ հաստատեց Կուբայի, 1975-ին՝ ՍՍՀՄ-ի հետ: Ճ-ի կառավարությունը ըստորագրել է միջուկային սպառազինության մրցավազքի դեմ ուղղված միջազգային շատ փաստաթղթեր:

**Քաղաքական կուսակցությունները և արհմիությունները**: Ժողովրդական ազգային կուսակցություն (ԺԱԿ), օպոզիցիոն կուսակցություն է, ստեղծվել է 1938-ին, միավորում է մանր բուրժուազիայի, գյուղատնտ. ու արդ. բանվորներին և մտավորականության գերակշռող մասին: Ճ-ի լեյբորիստական կուսակցություն (ՃԼԿ), կառավարող կուսակցություն է, ստեղծվել է 1943-ին, արտահայտում է առևտրա-արդյունաբերական և գյուղատնտ. բուրժուազիայի շահերը: Ճ-ի կոմունիստական կուսակցություն (ՃԿԿ), հիմնվել է 1975-ին, կուսակցության նախագահն է Խ. Սինքլերը, գլխավոր քարտուղարը՝ Ք. Լոուրենսը: Ճ-ի բանվորական կուսակցություն, հիմնվել է 1978-ին:

Բուստամանտե արտադրական միություններ, ստեղծվել է 1938-ին, ունի ավելի քան 100 հզ. անդամ: Ճ-ի բանվորների ազգային միություն, ստեղծվել է 1952-ին, ունի 102 հզ. անդամ: Ճ-ի արհմիությունների կոնգրես, ունի 20 հզ. անդամ:

**Տնտեսա-աշխարհագրական ակնարկ**: Ճ. օտարերկրյա կապիտալից կախման մեջ գտնվող ագրարային-արդյունաբերական երկիր է: Տնտեսության կարևոր ճյուղը բոքսիտների արդյունահանումն (11,4 մլն *տ*, 1977) ու արտահանումն է (2-րդ տեղը աշխարհում, Ավստրալիայից հետո): Արդյունահանվում է նաև գիպս, քվարցային ավազ, մարմար, կրաքար, աղ: Արտադրվում է կավահող: Զարգացած է սննդի արդյունաբերությունը: Կան տեքստիլ, կարի, կաշվի-կոշիկի, փայտամշակման, ղեղագործական, մետաղամշակման, ցեմենտի, նավթավերամշակման ձեռնարկություններ: Արդ. գլխավոր կենտրոնը Կինգստոնն է: 1976-ին արտադրվել է 2,4 մլրդ *կվտ.ժ* էլեկտրաէներգիա: Գյուղատնտեսությանը բնորոշ են խոշոր պլանտացիաների ու լատիֆունդիաների զուգակցումը գյուղացիական մանր տնտեսությունների հետ: Գյուղատնտ. գլխավոր կուլտուրան շաքարեղեգն է (65 հզ. *հա*, բերքը՝ 4000 հզ. *տ*, 1976): Մշակում են նաև բանան, ցիտրուսային կուլտուրաներ, կակաո, սուրճ, բատատ, մանիոկա, եգիպտացորեն ևն: Անասնապահությունը թույլ է զարգացած: Ավտոճանապարհների երկարությունը 16,1 հզ. *կմ* է (1976), երկաթուղիներինը՝ 389 *կմ* (1974): Հիմնական նավահանգիստը Կինգստոնն է: Միջազգային օդանավակայան կա Պալիսեյդոուսում (Կինգստոնի արվարձան) և Մոնտեգո Բեյում:

Ճ-ի արտաքին առևտրական հաշվեկշիռը բացասական է: Դեֆիցիտը լրացվում է տուրիզմից ստացվող եկամուտներով: Արտահանում է կավահող, բոքսիտներ, շաքարի հումք, բանան, ռոմ, ներմուծում՝ արդ. ապրանքներ, վառելիք, քսուքայուղեր, սարքավորում, պարեն: Առևտրական հիմնական գործընկերներն են ԱՄՆ, Մեծ Բրիտանիան, Կարիբյան ընդհանուր շուկայի երկրները, Վենեսուելան: Դրամական միավորը ճամայկական դոլլարն է, որը = ամերիկյան 1,1 դոլլարի:

**Բժշկա-սանիտարական վիճակը և առողջապահությունը**: Առողջապահության համաշխարհային կազմակերպության տվյալներով 1975-ին Ճ-ում ծնունդը կազմել է 1000 բնակչին՝ 30,1, մահացությունը՝ 6,9, մանկական մահացությունը 1000 ողջ ծնվածին՝ 23,2: Կյանքի միջին տևողությունը 65 տարի է: Տարածված են վարակիչ (ստամոքսա-աղիքային, տուբերկուլոզ ևն) և վեներական հիվանդությունները: 1974-ին գործել է հիվանդանոցային 34 հիմնարկ՝ 7,8 հզ. մահճակալով (1000 բնակչին՝ 3,9 մահճակալ), որից 29-ը 7,5 հզ. մահճակալով՝ պետական: Աշխատել են (1974) 570 բժիշկ (3,5 հզ. բնակչին՝ 1 բժիշկ), 107 ատամնաբույժ, 305 դեղագործ և ավելի քան 4 հզ. միջին բուժաշխատող: Բժիշկներ է պատրաստում Վեստ Ինդիայի համալսարանի բժշկ. ֆակուլտետը (Կինգստոն): 1974—75-ին առողջապահության ծախսերը կազմել են պետ. բյուջեի 11,9%-ը:

**Լուսավորությունը**: Առաջին դպրոցները Ճ-ում բացել են միսիոներները XVI դ.: XX դ. սկզբին ստեղծվել են պետ. տարրական և միջնակարգ դպրոցներ: Կրթությունը պարտադիր է 6—15 տարեկանների համար: Տարրական դպրոցը 6-ամյա է, միջնակարգը՝ 6- կամ 7-ամյա, երկու ցիկլով՝ ոչ լրիվ (3 տարի) և լրիվ (3 կամ 4 տարի): Պրոֆտեխնիկական պատրաստությունը (1—3 տարի) իրականացվում է 3-ամյա ոչ լրիվ միջնակարգ դպրոցի հիմքի վրա: Ուսուցիչներ են պատրաստում լրիվ միջնակարգ դպրոցի հիմքի վրա գործող մանկավարժական 7 կոլեջներ: Բարձրագույն կրթության համակարգի մեջ են մտնում Վեստ Ինդիայի համալսարանը Մոնեում (Կինգստոնի մոտ, հիմն. է 1948-ին), ուր Ճ-ի քաղաքացիների համար 1974-ից ուսուցումն ձրի է, արվեստների, բնական գիտությունների և տեխնոլոգիայի կոլեջը (1958, Կինգստոն), գյուղատնտ. դպրոցը (1910, Սպանիշ Թաունում): Վերջին երկու-

սում 1973-ից ուսուցումը ձրի է: Գրադարաններից են՝ համալսարանինը (ավելի քան 250 հզ. գիրք), Ճ-ի ուսումնասիրության ինստ-ինը (Կինգսթոն) կից հանրային (1879, ավելի քան 30 հզ. գիրք): Թանգարաններից են բնապատմական, գեղարվեստի և պատմության, գեղարվեստական պատկերասրահը:

**Մամուլը, ռադիոհաղորդումները, հեռուստատեսությունը**: 1980-ին Կինգսթոնում լույս են տեսել ավելի քան 40 թերթ ու հանդես: Խոշորագույններն են՝ «Դեյլի գլիներ» («Daily Gleaner», 1834-ից), «Սթար» («Star», 1951-ից), «Ջամայկա դեյլի նյուս» («Jamaica Daily News», 1973-ից) օրաթերթերը, «Վոյս օֆ Ջամայկա» («Voice of Jamaica», 1952-ից) շաբաթաթերթը, «Կարիբիըն չալինջ» («Caribbean Challenge», 1957-ից) ամսագիրը:

Ռադիոհաղորդումները իրականացնում են «Ճամայկայի ռադիո» (1950-ից) և «Ջամայկա բրոդքասթինգ քորփորեյշըն» (1959-ից) ընկերությունները: Հեռուստատեսությունը գործում է 1963-ից:

**Գրականությունը**: Զարգանում է անգլերենով և Ճ-ի կրեոլերենով: Անգլերենով գրականությունն առաջացել է XVIII դ.: Ազգային թեման առաջին անգամ արտացոլվել է «Մառլին կամ Պլանտատորների կյանքը Ճամայկայում» (1828) անստորագիր վեպում, Տ. Ռեդկամի (Տ. Գ. Մակ-Դերմոտ, 1870—1933) պոեզիայում և դրամատուրգիայում և Գ. Ջ. դը Լիսսերի (1878—1944) վեպերում: Գրականության վերելքն սկսվել է երկրորդ համաշխարհային պատերազմից (1939—45) հետո՝ կապված ազգային-ազատագրական շարժման վերելքի հետ: Աշխատավորության մասին պատմող սոցիալական վեպերով հանդես է եկել Ռ. Մեյսը (1905—55): Ազգային-ազատագրական պայքարին են նվիրված Վ. Ռիդի (ծն. 1913) վեպերը: Ժամանակակից Վեստ Ինդիայի կյանքն են պատկերում Ջ. Հիրնի (ծն. 1925) և Օ. Պատերսոնի (ծն. 1940) վեպերը: Կ. Մակ-Կեյը (1890—1948) իր բանաստեղծություններում ու արձակում մարմնավորել է ճամայկացի նեգրերի վիշտն ու զայրույթը: Ու. Ռոբերտսի (1886—1962), Ֆ. Շերլոկի (ծն. 1902), Դ. Քեմփբելլի (ծն. 1917), Հ. Կարբերիի (ծն. 1928) բանաստեղծություններում հնչում են հայրենի բնության և ազգային պատմության թեմաները: Հայտնի են Տ. Ռոնի (ծն. 1940) պիեսները:

**Ճարտարապետությունը և կերպարվեստը**: Ճ-ի արվեստում եվրոպական, հիմնականում անգլ., մշակույթի ազդեցությունը զուգորդված է աֆրիկյան ժողովուրդների ավանդույթներին: XVII—XVIII դարերից պահպանվել են միահարկ քարե և աղյուսե կառույցներ: XIX դ. կեսից գերիշխել են երկհարկանի փայտե տները: XX դ. կառուցվում են ժամանակակից շենքեր: XX դ. կեսից զարգանում է պրոֆեսիոնալ կերպարվեստը: Ժող. ավանդական արհեստներն են փայտի փորագրումը, գեղարվեստական մետաղամշակումը:

*Գրկ.* Булавин В.И., Ямайка, М., 1968; Аникина Е., Особенности экономического и политического развития Ямайки, «Лат инская Америка», 1973, № 3; Современная Вест-Индская новелла, М., 1975.

**ՃԱՄԲԱՐ** ռազմական, բնակավայրերից դուրս բանակատեղ, որը հատկապես սարքավորվում է զորքերի ուսումնավարժական խնդիրներին համապատասխան: Ճ-ները հայտնի են հնագույն ժամանակներից: Եղել են երթային և երկարաժամկետ: Ճ-ներ ստեղծելու և սարքավորելու արվեստը, որը հետագայում կիրառել են նաև մյուս ժողովուրդները, մեծ զարգացման է հասել Հին Հռոմում:

Ռուսաստանում Ճ-ի ստեղծման և ամրացման կանոնադրությունը շարադրվել է 1607—21-ին: Պետրոս I-ի օրոք զորքերը առաջին անգամ դուրս են բերվել ուսումնա-վարժական Ճ-ներ: XIX դ. 2-րդ կեսից հրետանու և ոչնչացման այլ միջոցների զարգացման համեմատ, անհրաժեշտ է եղել տարակենտրոնացնել զորքերը մարտում և Ճ., որպես զորքի ամրացված կայան, կորցրել է իր նշանակությունը:

Սովետական զինված ուժերում (նաև մյուս երկրների բանակներում) կան ուսումնական Ճ-ներ և կենտրոններ, որոնք կարևոր դեր են կատարում դաշտային պայմաններում զորքերի պատրաստության գործում: *Մ. Կարապետյան*

**ՃԱՄԲԱՐԱԿԻ ԼԵՌՆԱՆՑՔ**, գտնվում է Հայկական ՍՍՀ-ում, Միափորի լեռնաշղթայի արևելյան մասում, 2060 *մ* բարձրության վրա: Միացնում է Խնձորուտ և Գետիկ գետերի ավազանները:

**ՃԱՅ** (Garrulus glandarius), ճ ա ր ո ղ, ճընճղուկազգիների կարգի ագռավների ընտանիքի թռչուն: Մարմնի երկարությունը 34 *սմ* է, քաշը՝ մինչև 160 *գ*: Ճակատը սպիտակավուն է, զագաթը սև, մարմինը բաց մոխրաշիկավուն, պոչը սպիտակ:

Ճայ

Թևի վերին մեծ ծածկափետուրները երկնագույն են, սև շերտերով, առաջին կարգի թափահարող փետուրները՝ սև: Բնադրում է ծառերին, դնում 5—7 խայտաբղետ ձու: Թխսում են և՛ էգը, և՛ արուն (16—17 օր): Տարածված է Եվրոպայում, Ասիայում, Աֆրիկայի հս-արմ-ում, ՍՍՀՄ-ում՝ հիմնականում Ղրիմի և Կովկասի անտառներում, որտեղից ձմռանը քոչում է: ՀՍՍՀ անտառներում և այգիներում հանդիպում է կ ո վ կ ա ս յ ա ն Ճ.: Սնվում է միջատներով ու թրթուրներով, հատապտուղներով, սերմերով, անտառներում՝ հիմնականում կաղինով, որը ձմռան համար թաղում է հողում և այդպիսով նպաստում կաղնու տարածմանը:

**ՃԱՆԱՇՅԱՆ** Մեսրոպ (Պետրոս) Գևորգի (11.1.1908, Անկարա —13.4.1974, Վենետիկ), գրականագետ, բանաստեղծ, թարգմանիչ: Սկզբնական կրթությունն ստացել է Վենետիկի Մուրատ-Ռափայելյան վարժարանում: Այնուհետև սովորել է Մխիթարյան միաբանության դպրոցում (1923—27), Հռոմի Ս. Անսելմոսի համալսարանի փիլ. (1928—31) և աստվածաբանության (1931—1935) ֆակուլտետներում: Մխիթարյան միաբանության անդամ 1931-ից: 1937-ին տեղափոխվել է Փարիզ, դասավանդել հայկ. վարժարաններում: 1939—42-ին եղել է Վենետիկի վարժարանի տնօրենը, 1942-ից, որոշ ընդմիջումներով՝ «Բազմավեպ»-ի խմբագիրը, 1955—69-ին՝ նաև տպարանապետը: 1953-ին Ճ. հրատարակել է «Պատմություն արդի հայ գրականության» մեծածավալ աշխատության 1-ին հատորը, 1973-ին՝ «Հայ գրականության նոր շրջանի համառոտ պատմությունը»: Առանձին գրքերով լույս է ընծայել «Լորդ Բայրոնը Ս. Ղազարում» (ֆրանս. 1960), «Սայաթ-Նովա» (1964), «Ս. Ներսես Շնորհալիի շարականները» (1973) և այլ գրական ուսումնասիրություններ: Տպագրել է «Հոգետավիղ» (1954), «Լուսաղբյուր» (1960), «Մեսրոպական» (1963, նվիրված Մեսրոպ Մաշտոցին), «Փշրված քնար» (1973, նվիրված Պ. Դուրյանին) բանաստեղծությունների ժողովածուները: Կազմել է «Ծաղկաքաղ արդի հայ գրականության» (հ. 1—2, 1957—60) հատընտիրը, «Հայկական մանրանկարչություն» (1966) ալբոմը (արվեստաբան Ս. Տեր-Ներսեսյանի առաջաբանով):

Ճ. իտալ. է թարգմանել հայ գրողների մի շարք չափածո գործեր, որոնք լույս են տեսել «Արդի հայ բանաստեղծություն» (1963) գրքով: Նախաբանում հակիրճ տվել է հայ գրականության անցած ուղին:

*Երկ.* Փոլ Վալերի և իր բանաստեղծությունը, Վնտ., 1947: Alcuni canti popolari ed inni sacri armeni, Venezia, 1952; Canzoniere di Sayath-Nova, Venezia, 1964; Inni sacri di S. Nerses il Grazioso, Venezia, 1973.
*Խ. Կարապետյան*

**ՃԱՆԱՉՈՂ ՄԵՔԵՆԱ**, ազդանշանների ճանաչման տեխնիկական համակարգ: Ազդանշանները կերպարի, պատկերի կամ որևէ իրադրության կարևոր հատկանիշների համախումբ են՝ ներկայացված էլեկտրական մեծություններով: Կերպարի կարևոր հատկանիշների համախումբը կոչվում է *էտալոն*: Ճանաչումը կատարվում է ընթացիկ պատկերի պատկանելիության որոշումով՝ կերպարի նախօրոք մշակված էտալոնի հետ պատկերի համեմատմամբ: Ճանաչման մեթոդները կիրառություն են գտել գործնական խնդիրների լուծման բնագավառներում. 1. տառերի և թվանշանների ճանաչում՝ հաշվողական մեքենաների հիշողության մեջ տվյալներ ներմուծելու համար, 2. բանավոր խոսքի բառերի ճանաչում՝ ավտոմատների կառավարման և հաշվողական մեքենա տվյալների ներմուծման համար, 3. հիվանդությունների ախտորոշում, 4. մեքենաների անսարքությունների որոշում, 5. երկրաբանական հետախուզության տվյալների մշակում, 6. ռադիոլոկացիոն ազդանշանների մշակում, 7. կենդանի բջիջների ավտոմատ դասակարգում, 8. տարրական մասնիկների հետքերի պատկերների մշակում ֆիզիկական փորձերում, 9. արբանյակների նկարահանումների մշակում, 10. տիեզերական նկարահանումների մշակում ևն: Առավել հեշտ խնդիրները լուծվում են նկարագրության և դասակարգման (էտալոնի հետ համեմատելու) միջոցով: Բարդ խնդիրների լուծման համար օգտագործվում են ուսուց-

ման և ինքնուսուցման մեթոդներ: Գոյություն ունեն նկարագրության բազմաթիվ եղանակներ: Օրինակ, տառի պատկերը դիտվում է որպես ուղղի և շրջանային աղեղների հատվածների հաջորդություն, տառի նկարագրությունը՝ հատվածների և նրանց փոխադարձ դասավորության թվարկում: Հաճախ պատկերը նկարագրելու համար այն բաժանում են մեծ թվով քառակուսիների (256×256): Յուրաքանչյուր քառակուսի համապատասխանության մեջ է դրվում նրա լուսավորվածությունը բնութագրող թվի և տեղը որոշող կոորդինատների հետ: Այդ դեպքում էտալոնը ստացվում է օբյեկտի սև-սպիտակ նկարից: Ճանաչման խնդիրների բարդությունը պայմանավորված է ազդանշանների հսկայական քանակով (այն հաղթահարվում է մեծ արագագործության հաշվողական մեքենայի օգտագործմամբ) և ազդանշանների բազմազան աղմուկներով (հաղթահարվում է ուսուցման և ինքնուսուցման միջոցով՝ մաթ. վիճակագրության, ինչպես նաև հարմոնիկ, կոռելյացիոն, պերսեպտրոնային և այլ մեթոդների կիրառություններով): Ճ. մ-ներ են. ա. ընթերցող սարքը, բ. ձայնաճանաչ սարքը, որը ձայնային ազդանշանը վեր է ածում տպագրված խոսքի, գ. բժշկ. ախտորոշող մեքենան, որի մուտքին տրվում են հիվանդի վիճակի մասին տվյալներ, իսկ ելքում ստացվում է բուժման եղանակը և դեղատոմսը:

*Գրկ.* Файн В. С., Опознавание изображений, М., 1970.

**ՃԱՆԱՉՈՂՈՒԹՅՈՒՆ**, մարդկային մտածողության մեջ իրականության արտացոլման ու վերարտադրման պրոցեսը, որն անխզելիորեն կապված է պրակտիկայի հետ: Ճ-յան պրոցեսում մարդը ձեռք է բերում գիտելիքներ, հասկացություններ ռեալ երևույթների մասին, գիտակցում իրեն շրջապատող աշխարհը: Այդ գիտելիքներն օգտագործվում են պրակտիկ գործունեության մեջ աշխարհի վերափոխման, բնությունը մարդու պահանջմունքներին ենթարկելու նպատակով: Ճ-յան մեջ կարևոր դեր են խաղում *զգայությունը, ընկալումը*, մտապատկերը: Զգայությունները մարդուն ծանոթացնում են իրերի արտաքին հատկություններին. նա սկսում է տարբերել տաքը, սառը, գույները, հոտերը, պնդությունը, փափկությունը ևն: Առարկաների ընկալումն ու նրանց պատկերների պահպանումը մտապատկերներում ձևով հնարավորություն են ընձեռում գործառելու առարկաներով, նկատելու առարկաների արտաքին տեսքի ու նրանց ֆունկցիաների միջև եղած կապը: Իրերի հատկությունները, ֆունկցիաները, պրակտիկայի համար ունեցած նրանց օբյեկտիվ նշանակությունը, ամրագրվելով մարդկանց ազդանշանա-խոսքային գործունեության մեջ, դառնում են բառերի նշանակություն և իմաստ, բառեր, որոնց միջոցով մարդու մտածողությունն ստեղծում է որոշակի հասկացություններ իրերի, նրանց հատկությունների ու դրսևորումների մասին:

Ճ-յան մեջ կարևոր է նաև երևակայությունը, ստեղծագործական ֆանտազիան, ինտուիցիան (տես նաև *Հիշողություն*):

**ՃԱՆԱՉՈՒՄ** պետության, միջազգային իրավունքի նորմերի ամբողջություն, որով կարգավորվում է նոր պետությունների, որպես իրավունքի սուբյեկտի, միջազգային ասպարեզ մտնելու պրոցեսը: Ճ-ման հիմնական տեսակներից է այն պետությունների ու կառավարությունների Ճ., որոնք իշխանություն են ձեռք բերել այսպես կոչված «ոչ սահմանադրական ճանապարհով» (հեղափոխություն, քաղաքացիական պատերազմ, հեղաշրջում): Դրանց թվին է դասվում նաև ազգային ազատագրության, դիմադրության կազմակերպությունների ու պատերազմող կողմերի մարմինների Ճ.: Ճ-մամբ արդեն գոյություն ունեցող պետությունը ուղղակի հայտարարում է կամ որևէ այլ կերպ ցույց է տալիս, որ նոր պետ. կազմավորումը անկախ և սուվերեն պետություն է, միջազգային հարաբերության լիիրավ մասնակից, իսկ հին կառավարությունը այլևս չի ներկայացնում տվյալ պետությանը: Ճ-ման հիմնական ձևերն են՝ դե-յուրե Ճ. (պետության կամ կառավարության լրիվ, պաշտոնական Ճ.), դե-ֆակտո (ոչ լրիվ պաշտոնական Ճ., որին սովորաբար հաջորդում է դե-յուրեն) և «ad hoc»-ը՝ այսպես կոչված «փաստացի» Ճ., որով նշվում է նոր իշխանության հետ որևէ առանձին հարցով կամ առիթով (օրինակ, գերիների փոխանակություն ևն) ժամանակավոր պաշտոնական հարաբերությունների հաստատման փաստը: Ավելի լայն առումով Ճ. պետության ձևական ակտն է (կամ գործողությունը), որով տվյալ պետությունը հաստատում է իրավաբանական հետևանքների առաջացումը միջազգային հարաբերությունների ասպարեզում:

**ՃԱՆԱՉՈՒՄ** քրեական դատավարությունում, քննչական գործողություն, որի նպատակն է վկային (տուժողին, կասկածյալին, մեղադրյալին) հնարավորություն տալ ներկայացվող անձանց (իրերի) մեջ հայտնաբերելու այն օբյեկտը, որը նա տեսել է քննությանը հետաքրքրող իրադրության կապակցությամբ: Ճանաչման լիարժեքությունն ապահովելու համար քննիչը նախօրոք քննում է ներկայացվող անձանց (իրերի) ճանաչողին արդեն հայտնի արտաքին հատկանիշների մասին: Անձը ներկայացվում է ճանաչման նույն սեռի, իսկ հնարավորության դեպքում, ճանաչվողին արտաքին հատկանիշներով նման առնվազն երեք այլ անձանց հետ (դիակը ճանաչելիս այս կանոնը չի կիրառվում): Ճ. կատարվում է ընթերականների ներկայությամբ: Ճ-ման մասին կազմվում է արձանագրություն, որը դասվում է ապացույցների շարքը: Ճ-ման կարգը սահմանված է քրեական դատավարության օրենսդրությամբ (ՀՍՍՀ քրեական դատավարության օրենսգիրք, հոդվածներ 155—157):

**ՃԱՆԱՊԱՐՀԱՄԲԱՐՁԻՉ**, ռելսակոճափայտային վանդակի տեղադրման, կոպճավազի լցման մեքենա՝ շահագործվող երկաթուղային ճանապարհների վերանորոգման ու պահպանման և նորերի կառուցման համար: Անընդհատ գործողության Ճ. օգտագործվում է նոր երկաթուղիների շինարարությունում: Այն 2,2—3,8 *կմ/ժ* արագությամբ շարժվելիս ռելսակոճափայտային վանդակը բարձրացնում է մինչև 20 *սմ*: Ցիկլային գործողության Ճ. կիրառվում է երկաթուղային ճանապարհների վերանորոգման դեպքում՝ ռելսակոճափայտային վանդակը մինչև 40 *սմ* բարձրացնելու համար:

**ՃԱՆԱՊԱՐՀԱՅԻՆ ՆՇԱՆՆԵՐ**, որոշակի ձևի, չափի և գույնի պատկերներ. տեղադրվում են ավտոճանապարհներում և քաղաքի փողոցներում՝ վարորդներին և հետիոտնին ճանապարհի վտանգավոր հատվածների մասին զգուշացնելու, ինչպես նաև մտցված սահմանափակումների կամ երթևեկության պայմանների այլ առանձնահատկությունների մասին տեղեկացնելու համար: 1927-ին ՍՍՀՄ-ում առաջին անգամ ստանդարտացվեցին և ընդունվեցին 6 Ճ. ն., 1933-ին դրանց թիվը դարձավ 22, 1953-ին՝ 39, 1960-ին՝ 55: 1964-ին երթևեկության պայմանների մասին տեղեկացնելու հնարավորությունները զգալիորեն ընդլայնվեցին. զանազան նշանների ու դրանց կից ցուցանակների թիվը դարձավ 78: ՀՊՍՏ 10807—78-ով և 23457—79-ով ընդունված Ճ. ն. (222 նշան և դրանց կից ցուցանակներ) մշակվել են ճանապարհային նշանների և ազդանշանների վերաբերյալ կոնվենցիայի (Վիեննա, 1968) և այդ կոնվենցիան լրացնող Եվրոպական համաձայնագրի (Ժնև, 1971) պահանջներին համապատասխան: Պետ. ստանդարտով հաստատված է Ճ. ն-ի 7 խումբ. նախազգուշացնող, առավելության, արգելող, թելադրող, ինֆորմացիոն-ցուցիչ, սպասարկման և լրացուցիչ ինֆորմացիայի: Նշանների՝ այս կամ այն խմբին պատկանելու հիմնական տարբերիչ առանձնահատկություններն են ձևը, ֆոնի և եզրագծի գույնը:

Նախազգուշացնող նշանները վարորդին տեղեկացնում են սպասվող վտանգի բնույթի և իրադրությանը համապատասխան միջոցներ ձեռնարկելու մասին: Առավելության նշանները ցույց են տալիս խաչմերուկները, երթևեկելի մասերի առանձին փոխհատումները, ինչպես նաև ճանապարհի նեղ տեղամասերն անցնելու հաջորդականությունը: Արգելող նշանները մտցնում կամ վերացնում են երթևեկության որոշակի սահմանափակումները: Թելադրող նշանները հրահանգում կամ փոփոխում են երթևեկության որոշակի ռեժիմը: Ինֆորմացիոն-ցուցիչ նշանները տեղեկացնում են երթևեկության ռեժիմի առանձնահատկության կամ ընթացքի ուղղությամբ բնակավայրերի և այլ օբյեկտների տեղաբաշխման մասին: Սպասարկող նշանները տեղեկացնում են կենցաղային սպասարկման օբյեկտների տեղաբաշխման մասին: Լրացուցիչ ինֆորմացիայի նշանները կիրառվում են այլ խմբի նշանների գործողությունը պարզաբանելու կամ սահմանափակելու նպատակով: Ի լրացումն ռուսերեն մակագրությունների ինֆորմացիոն-ցուցիչ նշանների՝ ՍՍՀՄ հանրապետություններում անհրաժեշտության դեպքում կարելի է տեղակա-

յել ազգային լեզվով արված մակագրությամբ նշաններ: Բոլոր նշանները պետք է լուսավորվեն կամ ծածկվեն լուսանդրադարձնող նյութով այնպես, որ անբավարար տեսանելիության պայմաններում դրանց զանազանումն ապահովվի առնվազն 100 *մ*-ից:

**ՃԱՆԱՊԱՐՀԱՇԻՆԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՆԵՐ**, ավտոճանապարհների կառուցման, պահպանման և նորոգման, ինչպես նաև երկաթուղային, քաղաքացիական, արդյունաբերական, հիդրոտեխնիկական կառույցների և օդանավակայանների շինարարություններում տեխնոլոգիական պրոցեսներ իրագործող տեխնիկական միջոցներ: Ճ. մ. լայն կիրառում են ստացել նաև գյուղատնտեսությունում և բոլոր տեսակի ինժեներա-շինարարական աշխատանքներում: Ըստ նշանակության Ճ. մ. ստորաբաժանվում են հետևյալ խմբերի. 1. Նախապատրաստական աշխատանքներ կատարող՝ փխրեցնող, թփեր կտրող, ծառեր և ծառակոճղեր արմատահանող մեքենաներ: Դրանք տրակտորային կախովի սարքավորումներ են: Օգտագործվում են ինչպես ճանապարհաշինության և նոր հողերի յուրացման, այնպես էլ գործող ճանապարհների նորոգման աշխատանքներում: 2. Հողափոր-փոխադրող մեքենաներ. *կեռաշերեփ*, *բուլդոզեր*, *գրեյդեր*, գրեյդեր-էլևատոր: 3. Ճանապարհային ծածկույթների, գրունտների, հիմքերի խտացման նպատակով կիրառվող մեքենաներ՝ *գլդոններ*, տոփանիչ մեքենաներ: 4. Գրունտային, կոպճային և մանրախճային ճանապարհների ու հիմքերի բարելավման և կառուցման համար օգտագործվող մեքենաներ. գրունտախառնիչ մեքենաներ (նախատեսված են հիմքերի, ճանապարհային ծածկույթների, օդանավակայանների և այլ շինությունների գրունտները միներալային կապակցանյութերով ամրացնելու համար), խիճ և կոպիճ բաշխող մեքենաներ (կիրառվում են խճի և կոպիճի բաշխման և նախնական խտացման նպատակով՝ ճանապարհների հիմքերի պատրաստման և նորոգման ընթացքում), մանրակտոր քարերի բաշխիչներ (նախատեսված են ճանապարհային պատառը քարանյութերի մանր ֆրակցիաներով պատելու և տաքացված բիտումով ծածկույթների մակերևութային մշակման համար), ավտոբիտումատարներ և ավտոգուդրոնատարներ (նախատեսված են օրգ. կապակցանյութերի՝ *բիտումի*, *կուպրայի* փոխադրման և բաշխման համար՝ ինչպես մինչև 200°C տաքացված, այնպես էլ սառը վիճակում), խառնող մեքենաներ (նախատեսված են ճանապարհային պատառի վրա բիտումի հետ կոպիճախճային նյութերի խառնման համար): 5. Ասֆալտբետոնե և ցեմենտբետոնե ծածկույթով ճանապարհների շինարարություններում կիրառվում են պարբերական և անընդհատ գործողության ասֆալտբետոնի խառնիչներ (նախատեսված են բիտումի հետ միներալային նյութերի՝ խճի, ավազի, լցանյութի խառնման համար), ասֆալտափռիչներ (իրականացնում են նախապես պատրաստված և խտացված հիմքերի վրա տարբեր բիտումամիներալային խառնուրդների շերտի պահանջվող հաստությամբ հավասարաչափ փռումը), ցեմենտբետոնե ծածկույթների պատրաստման մեքենաներ (դրանք մեխանիզմների կոմպլեքսներ են, որոնք օգտագործվում են ճանապարհային տաշտերի ու հիմքերի պատրաստման, բետոնախառնուրդի խառնման ու բաշխման, ծածկույթների հարդարման՝ կարանների բացման, քսահարթման նպատակներով): 6. Ճանապարհների պահպանման և նորոգման մեքենաներ են ասֆալտատաքացուցիչները (նախատեսված են ասֆալտբետոնե ծածկույթներով ճանապարհները նորոգելիս վնասված տեղամասերի տաքացման համար), ճեղքերի մաքրման և մշակման մեքենաները (իրականացնում են ասֆալտբետոնե ծածկույթներով ճանապարհների ճեղքերի մաքրումն ու մշակումը), լվացող և մաքրող մեքենաները (օգտագործվում են փողոցները թափոններից մաքրելու և լվանալու նպատակներով), մակնշող մեքենաները (նախատեսված են ճանապարհների ցուցանշանները ներկանյութով նշելու և օդանավակայանները նշագծելու համար), ձյունամաքրիչ մեքենաները (կիրառվում են ճանապարհները մինչև 600 *մմ* հաստությամբ պնդացած և մինչև 1200 *մմ* հաստությամբ թարմ ձյունաշերտերից մաքրելու նպատակով):

*Գրկ.* Дорожные машины, под общ. ред. Н. Я. Хархуты, 2 изд., перераб. и доп., Л., 1976.

**ՃԱՆԱՊԱՐՀԱՖՐԵԶ**, գրունտը փխրեցնող, մանրացնող և կապակցանյութերի հետ խառնող մեքենա: Օգտագործվում է ճանապարհների և օդանավակայանների հիմնատակեր ու ծածկույթներ կառուցելիս: Ճ-ի աշխատանքային օրգանը ռոտորն է: Ճ-ները լինում են ինքնագնաց, կախովի և կցովի:

**ՃԱՆԱՊԱՐՀԻ ՊԱՍՏԱՌ**, տես *Պաստառ*:

**ՃԱՆԱՊԱՐՀԻ ՕՊՏԻԿԱԿԱՆ ԵՐԿԱՐՈՒԹՅՈՒՆ**, երկրաչափական և ալիքային *օպտիկայի* հասկացություն: Ճ. օ. ե. հավասար է այն հեռավորությանը, որ լույսը կանցներ վակուումում՝ նույն ժամանակի ընթացքում: Արտահայտվում է համասեռ միջավայրում լուսային ճառագայթի ճանապարհի երկարության և բեկման ցուցչի արտադրյալով: Տես նաև *Ինտերֆերենցիա լույսի*:

**ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐ**, ցամաքային հաղորդակցության որոշակի ուղիներ՝ մարդկանց, փոխադրամիջոցների ու բեռների տեղափոխության համար: Տվյալ երկրի սոցիալ-տնտեսական կյանքում ունեցած դերին համապատասխան, ըստ ընդգրկման մասշտաբների (ծավալի), Ճ. բաժանվում են հետևյալ տեսակների՝ մայրուղիներ, միջբնակավայրային Ճ., քաղաքային և գյուղական երթուղիներ:

Եվրասիայում հաղորդակցության կանոնավոր ճանապարհացանց ստեղծվել է դեռևս մ. թ. ա. V հազարամյակում, առավել որոշակի է դարձել մ. թ. ա. I հազարամյակի ընթացքում և հիմք ծառայել տարանցիկ-միջմայրցամաքային հնագույն այնպիսի Ճ-ի ձևավորման, ինչպիսիք էին նաև Հայկական լեռնաշխարհով անցնող *Արքայական ճանապարհը*, *Մետաքսի ճանապարհը*, Արաբական խալիֆայության Ճ., Անգլիայից մինչև Միջերկրածովյան երկրներ ձգվող Անագի ճանապարհը, Միջին Եվրոպան հատող Սաթի ճանապարհը, Միջին Ասիայից Մերձավոր Արևելք ձգվող Լազվարթի ճանապարհը, Հայաստանից՝ Կոռի աղահանքերից Սև ծովի հվ-արլ. ափերը (Փոթի) ձգվող Աղի ճանապարհը ևն, որոնց մեծ մասը զուգորդվում էր գետային ու ծովային երթուղիների հետ: Հին Հռոմ. ճանապարհացանցը բաղկացած էր 372 խոշոր մայրուղիներից, որոնցից 29-ը հատվում էին Հռոմում: Ամերիկյան մայր ցամաքում ճանապարհաշինությունը զարգանում է մ. թ. ա. I հազարամյակի սկզբին, երբ ինկերի տերությունում ստեղծվում են սալարկված և ժայռափոր Ճ.:

Ռազմաօսեթական ճանապարհը

Հայկական լեռնաշխարհի կարավանային հնագույն Ճ-ի կենտրոնը ուրարտ. ժամանակաշրջանում Վանա լճի արլ. ափերն էին Տուշպա (Տոսպ-Վան) մայրաքաղաքով և Արարատյան դաշտը՝ Արգիշտիխինիլի (Արմավիր) քաղաքով. հետագայում (մինչև V—VI դդ.) Հայաստանի գլխավոր Ճ-ի հանգուցակետն էր Արարատյան դաշտավայրը՝ Արտաշատ, այնուհետև՝ Դվին մայրաքաղաքներով: Հայաստանը հատվում էր հս. և հվ. մայրուղիներով, որոնցից առավել հայտնի էին *Արքունի պողոտան* (Արտաշատ—Տիգրանակերտ մայրուղին, մ. թ. ա. II դ.—մ. թ. I դ.), հետագայում (IX—XI դդ.)՝ Նախիջևան—Դվին—Անի—Կարին (Էրզրում)—Տրապիզոն, Դվին—Սևանա լճի արլ. ափ—Թիֆլիս, XIX դ. սկզբից՝ Երևան—Ջալալօղլի (այժմ՝ Ստեփանավան)—Թիֆլիս, Երևան—Ջուլֆա—Թավրիզ, Երևան—Էրզրում—Երզնկա, Երևան—Ախալքալաք—Փոթի և այլ մայրուղիներ, որոնցից տարբեր ուղղություններով ճյուղավորվում էին բազմաթիվ երթուղիներ:

Բացի ուղիների երթևեկությանը, փոխանակությանն ու առևտրին, փոստային կանոնավոր հաղորդակցությանը ծառայելուց, ճանապարհացանցի ձևավորումն ու կատարելագործումը խթանեց նաև խոշոր Ճ-ի մերձակայքում ու խաչմերուկներում քաղաքների, ավանների, իջևան-

հյուրատների ի հայտ գալուն: Հնագույն ժամանակներից սկսած Ճ-ի մեծ մասը ցեխաշաղախով խճապատվում էր, գետաքարով երեսապատվում կամ սալարկվում, ճահճուտ վայրերում՝ փայտամածվում: Երբեմն Ճ. ունենում էին հեռավորության, ուղիների ցուցանշաններ ևն: XIX դ. սկզբից արհեստական խճով համատարած պատվող ճանապարհածածկույթի կիրառումը մեծ չափով նպաստեց ճանապարհային շինարարության, խճուղիների կառուցման բուռն վերելքին: Ճանապարհածածկույթի հաստությունը նվազեցվեց՝ հասցըվելով մինչև 0,24—0,27 *մ*: Կապված ավտոմեքենայի հայտնագործման ու հետագա կատարելագործման հետ՝ սկսեցին առաջանալ նոր և նորագույն կառուցվածքի Ճ.: Քանի որ խճապատ ճանապարհածածկույթը չէր կարող ապահովել ավտոմոբիլային հարաճուն երթևեկության պայմանները, XX դ. 20-ական թթ. սկսվեց ասֆալտապատ *ավտոմոբիլային ճանապարհների* ու մայրուղիների բուռն շինարարությունը (տես *Ասֆալտ*, *Ասֆալտապատում*):

Ճանապարհացանցի աննախընթաց զարգացումը խթանեց ճանապարհաշինական մեքենաների ու նյութերի արտադրությանը: Ժամանակակից քաղաքային երթուղիները, ինչպես նաև առանձին քաղաքներ ու պետություններ միմյանց կապող Ճ. ինժեներական կառույցների համալիրներ են, որոնք ապահովում են շարժման բարձր արագություն և փոխադրամիջոցների մեծ բեռնատարողություն: XX դ. 20—30-ական թթ. Մեծ Բրիտանիայում և Ռուսաստանում, իսկ 1899-ին՝ Հայաստանում (Թիֆլիս—Ալեքսանդրապոլ—Կարս) կառուցվեցին ընդհանուր օգտագործման առաջին երկաթուղիները: Մայրուղիներով խճողված խոշոր քաղաքների զարգացումը, վերգետնյա հաղորդակցության դժվարությունները հանգեցրին ներգետնյա ռելսային երթուղիների՝ *մետրոպոլիտենների* և վերգետնյա միառելս երթուղիների ստեղծմանն ու զարգացմանը: Տես նաև *Ավտոտրակտորային ճանապարհներ Հայաստանում*, *Երկաթուղի*:

*Գրկ.* Մանանդյան Հ. Հ., Հայաստանի գլխավոր ճանապարհները ըստ Պևտինգերյան քարտեզի, Ե., 1936: Նույնի, О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен (V в. до н. э.—XV в. н. э.), 2 изд., перераб. и доп., Е., 1954; Кудрявцев А. С., Очерки истории дорожного строительства в СССР, ч. 1, Дооктябрьский период, М., 1951.

*Լ. Պետրոսյան*

**ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՆԵՐԻ ԾԱՌ** (Ravenala madagascariensis), բանանազգիների ընտանիքի ծառանման բույս: Բունը բարձր



Ճանապարհորդների ծառ

է՝ մինչև 10 *մ*, տերևները խոշոր են, հովհարաձև դասավորված: Տերևապատյանները երկար են և մեծ քանակությամբ ջուր են կուտակում, որը երբեմն օգտագործվում է խմելու համար (այստեղից էլ՝ «Ճ. ծ.» անվանումը): Ծաղիկները հավաքված են հասկանման ծաղկաբույլում և փոշոտվում են թռչունների միջոցով: Պտուղը հատապտուղ է, ձևով նման վարունգի: Մադագասկար և Ռեյունյոն կղզիների էնդեմիկ բույս է:

**ՃԱՆԵՐԵՆ**, լազերեն, իբերա-կովկասյան լեզվաընտանիքի քարթվելական խմբի լեզու: Մեգրելերենի հետ դիտվում է որպես զաներենի բարբառ. գիր չունի: Այժմ խոսվում է Թուրքիայում (սևծովյան ափամերձ շրջաններում) և Վրաց. ՍՍՀ-ին առնչվող սահմանամերձ որոշ վայրերում: Հնչյունական համակարգում առկա է 5 ձայնավոր, 32 բաղաձայն, քերականական համակարգում՝ 7 հոլով, մոտ 14 եղանակա-ժամանակային ձև: Բառապաշարում կան ծավալուն թուրքաբանություններ, ինչպես նաև վրաց. և հուն. փոխառություններ:

**ՃԱՆԻԿՅԱՆ** Հովսեփ [1840, գ. Ակն (Երզնկայի վիլայեթ)—14.2.1902, Վաղարշապատ (այժմ՝ Էջմիածին)], հայ բանահավաք-ազգագրագետ: 1847-ին տեղափոխվել է Թիֆլիս, ավարտել Ներսիսյան դպրոցը: Այնուհետև ծննդավայրում զբաղվել է մանկավարժությամբ ու բանահավաքությամբ: Կյանքի վերջին տարիներին դասավանդել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանում: Երկարամյա հավաքչական գործունեության արդյունք է 1895-ին լույս տեսած «Հնությունք Ակնա» ժողովածուն, որը հարուստ նյութ է պարունակում Ակնա ազգագրության (գաղթականության պատմություն, տեղագրություն, վիճակագրություն, տնտ. և հասարակական կենցաղ, սովորույթներ, հավատք), բանահյուսության (երգ, առած-ասացվածք, զրույց) և բարբառի վերաբերյալ: Ժողովածուին կցված է Կոմիտասի ձայնագրած և հայկ. ձայնանիշերով նոտագրած Ակնա 25 ժող. երգ (օրոր, անտունի, հարսանեկան, համբարձման, պանդխտության, թաղման մեղեդիներ ու պարեղանակներ): Ճ. հրատարակել է նաև «Դժոխք» (1897, 1900) խորագրով երկհատոր մի գիրք, որտեղ Միլտոնի «Դրախտ կորուսյալ»-ի և Դանթեի «Դժոխք»-ի հետևությամբ իրապատում և բանահյուսական խառը դրվագներով այլաբանորեն ներկայացրել է հայ ժողովրդի կյանքը, արտահայտել բարոյախոսական գաղափարներ:

*Գրկ.* Երեմյան Ս., Ազգային դեմքեր: Գրագետ հայեր (երկրորդ շարք), Վնտ., 1913, էջ 179—219:

*Ա. Նազինյան*

**ՃԱՆՃ** (լատ. Musca), համաստեղություն երկնքի հարավային կիսագնդում: Գտնըվում է Քամելեոն, Ողնուց, Կենտավրոս, Խաչ, Կարկին, Դրախտային թռչուն համաստեղությունների միջև: Ամենապայծառ աստղերը երրորդ *աստղային մեծության* են: ՍՍՀՄ տարածքից չի երևում:

**ՃԱՆՃԵՐ** (Brachycera), կարճաբեղիկ երկթևանիներ, երկթևանիների կարգի միջատների ենթակարգ: Մարմնի երկարությունը 1—55 *մմ* է: Բերանային ապարատը չհատվածավորված կնճիթիկ է: Թաթերի ծայրերին ունեն 2-ական ծծիչներ, թևերը թաղանթային են՝ թույլ ջղավորված: Զարգանում են լրիվ կերպարանափոխությամբ: Թրթուրը անոտ է, հարսնյակը ծածկված է կամ ամփոփված է կեղծ բոժոժում: Լայնորեն տարածված են ամբողջ աշխարհում (շուրջ 80 հզ. տեսակ, որից 20 հզ.՝ ՍՍՀՄ-ում): Որոշ Ճ. սնվում են ծաղիկների նեկտարով, մյուսները՝ քայքայվող օրգ. նյութերով, գոմաղբով ևն: Կան նաև արյունածուծ տեսակներ: Բազմանում են գլխավորապես ձվերով, հազվադեպ հանդիպում է թրթուրների կենդանածնություն: Թրթուրները բուսակեր են կամ կենդանիների հյուսվածքների և օրգանների մակաբույծներ, սընվում են նաև քայքայվող նյութերով: Ճ-ի բազմաթիվ սինանթրոպ տեսակներ (տնային Ճ., սենյակային Ճ., մսային Ճ. ևն) վարակիչ հիվանդությունների (խոլերա, դիզենտերիա, սիբիրյան խոց, տուլարեմիա ևն) հարուցիչների, նախակենդանիների ցիստերի, հելմինթների ձվերի տարածողներ են, մթերքների վնասատուներ:




Ճանճեր. *1.* տնային, 2. վոլֆարտյան, *3.* տնային ճանճի թրթուրը

Ճ-ի մակաբույծ թրթուրներն առաջացնում են կենդանիների, երբեմն՝ մարդու միազներ (վոլֆարտյան Ճ.): Բուսակեր Ճ. վնասում են մշակովի բույսերին: ՀՍՍՀ-ում, որպես գյուղատնտ. կուլտուրաների վնասատուներ, հայտնի են բալի, կաղամբի, սոխի, շվեդական Ճ.: Կան օգտակար տեսակներ, որոնք նպաստում են բույսերի փոշոտմանը, ոչնչացնում վնասատու միջատներին:

Պայքարի միջոցները. գյուղատնտեսության վնասատուների դեմ՝ ագրոտեխնիկական և քիմ. միջոցառումներ, սինանթրոպ տեսակների դեմ՝ սանհիգիենային կանոնների պահպանում, ինսեկտիցիդներ:

*Ա. Զուբկովա*

**ՃԱՆՃԻ**, Ճանճիկ, բերդ Լեռնային Կիլիկիայում: Սմբատ Գունդստաբլը Ճ. հիշատակել է Լևոն Բ-ի թագադրության (1198) հանդեսի առնչությամբ: Այդ ժամանակներում Ճ-ի տերն էր Կոստանդին իշխանը: 1260-ին Ճ-ի տեր է հիշվում Վասակ իշխանը, որը պատանդ էր ուղարկվել Եգիպտոս՝ Հեթում Ա թագավորի որդի Լևոնին գերությունից ազատելու համար: Ղ. Ալիշանը ենթադրաբար Ճ. նույնացնում է Կոկիսոն և Կապան բերդերի մոտակայքում հիշատակվող Մարիանչիլ-կալեսի կամ Չինչին-կալեի հետ:

*Գրկ.* Ալիշան Ղ., Սիսուան, Վնտ., 1885: Տեր-Ղազարյան Հ., Հայկական Կիլիկիա, Անթիլիաս, 1966:

*Թ. Հակոբյան*

**ՃԱՆՃԻ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Սվազի վիլայեթում: XIX դ. վերջին ուներ 450 բն., որոնցից 140-ը՝ հայ, մնացածը՝ թուրք: Զբաղվում էին երկրագործությամբ,

անասնապահությամբ և այգեգործությամբ: Գյուղն ուներ եկեղեցի (Ս. Խաչ): Ճ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մի մասը զոհվել է գաղթի ճանապարհին:

**ՃԱՆՃՈՐՍՆԵՐ** (Muscicapidae), ճնճղուկազգիների կարգի թռչունների ընտանիք: Մարմնի երկարությունը 110—170 *մմ* է, քաշը՝ 8—25 *գ*: Ունեն ցածր ու լայն կտուց, որի հիմքում և բերանի անկյուններում կան խոզաններ: Լավ արտահայտված է կատարը: Լինում են միապաղաղ մոխրագույնից մինչև վառ խայտաբղետ գունավորմամբ: Մեծ մասի արուների փետուրների գունավորումը տարբերվում է էգերից: Հանդիպում են ամենուր, բացառությամբ Ամերիկայի, առավելապես արևադարձերում (թփուտներում, նոսր ծառուտներում, այգիներում ու պուրակներում): Բնադրում են ծառերի ու թփերի վրա, փչակներում, երբեմն՝ ժայռերում, դնում՝ 4—10 ձու: Թխսում է հիմնականում էգը (14 օր): Հայտնի է Ճ-ի շուրջ 360, ՍՍՀՄ-ում՝ 15 տեսակ, որոնք չվող են և ձմեռում են Աֆրիկայում, Հարավային Ասիայում: Հայաստանում հանդիպում է 4 տեսակ (խայտաբղետ, սպիտակապարանոց, մոխրագույն և փոքրիկ Ճ.): Սնվում են ճանճերով, սարդերով, թրթուրներով, երբեմն՝ հատապտուղներով: Օգտակար են, ոչնչացնում են մեծ քանակությամբ վնասակար միջատներ:

**ՃԱՇԱԿ** գ ե ղ ա գ ի տ ա կ ա ն, գեղեցիկի դիրքերից արվեստի ստեղծագործությունն ու իրականությունն ընկալելու և սոցիալ-հոգեբանական գնահատական տալու մարդու հոգևոր ընդունակությունը: Որպես գեղագիտական կատեգորիա Ճ., ըստ էության, կիրառվում է XVII դարից: Սկսած Ն. Բուալոյից Ճ-ի հիմնական հատկանիշներ են համարվել ճշմարտանմանությունը, բանական լինելը, հստակությունը. Հ. Հոմը և Ա. Շաֆտսբերին Ճ-ին հաղորդել են նաև բարոյական իմաստ: Ի. Կանտը «Ճ-ի անտինոմիաներում» Ճ. ներկայացրել է որպես զգայության և բանախոհության երկընտրանք, որպես հակասություն անհատական ազատ դատողության և Ճ-ի համընդհանրության միջև: Սակայն Կանտը չկարողացավ լուծել այս անտինոմիաները: Հեգելը Ճ. քննարկել է հիմնականում կապված արվեստի հետ: Սակայն գիտակցելով Ճ-ի լայն բովանդակությունը՝ պնդել է, որ այն «մշակույթի ազդեցությամբ նրբացված գեղեցիկի զգացումն է»: Մարքսիստական գեղագիտությունն ընդգծում է Ճ-ի հասարակական բնույթը և կախվածությունը նրա կրողի սոցիալական դրությունից, գործուն բնույթը և առարկայական պայմանավորվածությունը: Մարքսիստական գեղագիտությունը Ճ. դիտում է որպես կյանքի բոլոր բնագավառներում դրսևորվող պատմահասարակական մշակույթի արտահայտություն: Ճ-ի առաջացման մեջ ելակետային գործոն է ճանաչվում *արվեստը*: Բնության, մարդու և մարդկային պատմության գեղագիտական կողմի նկատմամբ Ճ-ի ձևավորումը ածանցյալ է և պատմականորեն իրականացվել է արվեստի միջոցով: Ընդհանրապես Ճ-ի զարգացման պատմությունը վկայում է նրա ոլորտների ընդլայնումը: Արվեստի մեջ գեղեցիկի ընկալումով ավելի խոր և նուրբ է ըմբռնվում նաև բնության, շրջապատի իրերի, մարդու գեղեցկությունը: Առօրյայում օգտագործվում է նաև «գեղարվեստական Ճ.» հասկացությունը՝ որպես գեղագիտական Ճ-ի հոմանիշ: Այս դեպքում գեղարվեստական Ճ. հասկացվում է որպես գեղագիտական Ճ., որը դրսևորվում է գեղարվեստական գործունեության ոլորտում (գեղարվեստական ստեղծագործության գնահատումը, ստեղծումը, ընկալումը): Գեղարվեստական Ճ-ի ձևավորման վրա ազդեցություն են ունենում ինչպես անհատի սոցիալական դրությունը, այնպես էլ ժողովրդի ազգային ավանդույթները և տեղի գեղարվեստական մշակույթի յուրահատկությունները: Գեղագիտական Ճ-ի ձևավորումը *գեղագիտական դաստիարակության* նպատակներից է:

Ճ. գործածվում է նաև սեր կամ հակում («երաժշտական Ճ.», «գրական Ճ.»), ինչպես և ոճ («եվրոպական Ճ.», «XVIII դ. ճաշակով») իմաստներով:

*Գրկ.* Մ ա ր ք ս Կ. և Է ն գ ե լ ս Ֆ., Արվեստի մասին, հ. 1—2, 1963—64: М а ц а И. Л., Об эстетическом вкусе, М., 1963; К о г а н Л. Н., Художественный вкус, М., 1966; А к о п д ж а н я н Е. С., О природе эстетической потребности, Е., 1973; С к а т е р щ и к о в В. К., Об эстетическом вкусе, М., 1974; Д ж и д а р ь я н И. А., Эстетическая потребность, М., 1976.

*Ե. Հակոբջանյան*

**«ՃԱՇԱԿ ՈՍԿԵՂԵՆ ԴՊՐՈՒԹՅԱՆ»**, պատմական, գիտական, բանասիրական ամսագիր, 1887-ից՝ տարեգիրք: Լույս է տեսել 1886—1887, 1889-ին, Կ. Պոլսում: Խմբագիրներ՝ Մ. Գարագաշյան, Հ. Գուրգեն: Գրաբարով ընթերցողներին է ներկայացրել պատմական հոդվածներ (Մեսրոպ Մաշտոցի կենսագրությունը ըստ Կորյունի, հայոց լեզվի ծագումն ու զարգացումը, տպագրության գյուտն ու ազդեցությունը մշակույթի առաջընթացի վրա ևն), մատենագիտական, բանասիրական, լեզվաբանական տեսություններ, հայ և օտար (Լամարթին, Հյուգո, Լաֆոնտեն, Վոլտեր, Ռասին, Ֆենելոն և ուրիշներ) հեղինակների ստեղծագործություններ, առակներ, աշխարհագրական տեղեկություններ: Ունեցել է գրաբար-աշխարհաբար բառարանային բաժին:

**ՃԱՇՈՑ**, Տ ո ն ա մ ա կ, Տ ո ն ա ն ա մ ա կ, Տ ա ր ե գ ի ր ք, ճաշի ժամերին մինչև երեկոյան ժամերգությունը, եկեղեցում ընթերցվելիք նյութերի արարողական ժողովածու: Ընթերցվելիք նյութը՝ «Ը ն թ ե ր ց ու ա ծ ը», քաղված էր Հին և Նոր կտակարաններից, հատկապես՝ Գործք Առաքելոցից, որին հաջորդում էին համապատասխան սաղմոսներ, կցուրդներ, ավելի ուշ՝ նաև շարականներ: Ճ-ի բովանդակությունը՝ Քրիստոսի ծննդից սկսած, տերունական տոների տարեկան տոնակարգի սահմանումն է, համապատասխան ընթերցվածներով: Միջնադարյան մյուս ժողովածուների նման Ճ. էլ ունի իր տարատեսակները (երուսաղեմյան, մինչվկայասերյան և վկայասերյան), որոնց բոլորին բնորոշն այն է, որ տոները ամսաթվային չեն, այլ շարժական են՝ շաբաթվա օրերով սահմանված (օրինակ՝ «Զ կիրակի զկնի Հոգեգալստյան», որ նշանակում է՝ Հոգեգալուստի տոնից հետո վեցերորդ կիրակին) (տես նաև *Տոնար*):

Սկսած XI դ. Ճ. ժողովածուները փոփոխվել են: *Գրիգոր Բ Վկայասերի* ջանքերով այնտեղ մուտք է գործել տոմարական տոնակարգը՝ տոների ամսաթվային նշումները, և, որ Ճ. ժողովածուների համար առավել կարևոր է, տերունական տոների կողքին Ճ-ում սահմանվել են նոր՝ հայկ. տոներ՝ Մեսրոպ Մաշտոցի, Սահակ Պարթևի, Թարգմանչաց, Վարդանանց, Ղևոնդյանց, Վահան Գողթնեցուն և բազմաթիվ այլ նշանավոր գործիչների ու պատմական իրադարձությունների նվիրված տոներ, որոնց թիվը հասնում է 76-ի (1154 թ., Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարան, ձեռ. № 832): Դրանով ընդհանուր քրիստոնեական արարողական ժողովածուի դիմագիծը ազգայնանում է: Գրիգոր Բ Վկայասերի «Տոնամակ» Ճ-ում փոխվել է նաև ընթերցվածների բովանդակությունը: Հայկ. նշված տոների օրերին, Գործք Առաքելոցից, սաղմոսներից քաղված հատվածների փոխարեն, եկեղեցում ընթերցվել են հայ գործիչների կյանքին ու գործին նվիրված համառոտ պատմություններ, որ ժողովածուում տեղադրելու համար մշակել էր Գրիգոր Վկայասերը՝ իր աշակերտ ու գործակից Կյուրակոսի հետ. Ճ-ի այս վերախմբագրությունը հիմք է հանդիսացել հայկ. միջնադարյան մի նոր ժողովածուի՝ Տեր-Իսրայելի *Հայսմավուրքի* համար: Երբ Հայսմավուրքներն իբրև ինքնուրույն ժողովածուներ ավարտուն ձև են ստացել, անհրաժեշտություն է առաջացել մաքրելու Ճ. հետագայում մուծված տարրերից, որի հետևանքով մինչև այսօր գործում է թե Հայսմավուրքը՝ իր օրացուցային լրիվ կարգով ու սյուժետային պատմություններով, թե Ճ. ժողովածուն՝ տերունական տոների շարժական-շաբաթական կարգով ու ընթերցվածների հին համակարգով: Ճ-ները նաև պատկերազարդվել են: Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանում պահվող Ճ-ներից գեղարվեստական արժեքով առանձնանում է «*Հեթում Բ թագավորի ճաշոցը*» (1286 թ., ձեռ. № 979):

*Գրկ.* Ա վ դ ա լ բ ե գ յ ա ն Մ. Թ., Գրիգոր-Վահրամ Վկայասերի «Տոնամակ» ժողովածուն, ՊԲՀ, 1977, № 4, էջ 129—139:

*Մ. Ավդալբեգյան*

**ՃԱՊԱՂՋՐԻ ԴԱՇՏ**, գտնվում է Հայկական լեռնաշխարհում, Արածանիի վտակ Գյունեկ գետի ստորին հոսանքում, Հայկական Տավրոսի հս. ստորոտին: Խզման հետևանքով առաջացած իջվածք է՝ լցված նեոգեն-անթրոպոգենի լճա-գետային և հրաբխային նստվածքներով: Տարածությունը մոտ 500 *կմ²* է, բարձրությունը՝ 1000—1200 *մ*: Կլիման ցամաքային է՝ տաք ամառներով և ցուրտ ձմեռներով: Հունվարի միջին ջերմաստիճանը —5°C-ից մինչև —3°C է, հուլիսինը՝ 22—24°C, տարեկան տեղումները՝ 300—500 *մմ*: Գերիշխում են տափաստանները:

**ՃԱՊԱՂՋՈՒՐ**, Կ ի թ ջ ու ր, գետ Հայկական լեռնաշխարհում, Գյունեկ գետի աջ վտակը (Արածանիի ավազան): Երկարությունը 68 *կմ* է: Սկիզբ է առնում Հայկա-

կան Տավրոսի հս. ճյուղավորության հվ. լանջից: Սնումը խառն է, հորդացումը՝ գարնանը: Ճ-ի ափին է գտնվել պատմական Կթառիճ ամրոցը (այժմ՝ Բինգյոլ քաղաքը):

**ՃԱՊՈՆԱԿԱՆ ԳԻՐ,** *հիերոգլիֆներից* (մոտ 15 հզ.) բաղկացած գրային համակարգ, որոնցով նշանակում են մեկ կամ մի քանի համանիշ ձևույթներ և վանկային այբուբենի երկու տարբերակ՝ հիրագանա, կատականա, առաջինը՝ օժանդակ ձևույթների ու նմանաձայնությունների, երկրորդը՝ նորագույն փոխառությունների գրության համար: Ճ. գ. զուգակցում է գաղափարագրության ու հնչյունագրության սկզբունքները: Հիերոգլիֆները VI—VII դդ. չինական փոխառություններ են:

Կատականա

| | | | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| ア | カ | サ | タ | ナ | ハ | マ | ヤ | ラ | ワ | ガ | ザ | ダ | バ | パ |
| a | ka | sa | ta | na | ha | ma | ya | ra | wa | ga | za | da | ba | pa |
| イ | キ | シ | チ | ニ | ヒ | ミ | | リ | ヰ | ギ | ジ | ヂ | ビ | ピ |
| i | ki | si | ti(tsi) | ni | hi | mi | | ri | wi(i) | gi | zi | di | bi | pi |
| ウ | ク | ス | ツ | ヌ | フ | ム | ユ | ル | | グ | ズ | ヅ | ブ | プ |
| u | ku | su | tu(tsu) | nu | hu | mu | yu | ru | | gu | zu | du | bu | pu |
| エ | ケ | セ | テ | ネ | ヘ | メ | エ | レ | ヱ | ゲ | ゼ | デ | ベ | ペ |
| e | ke | se | te | ne | he | me | ye | re | we(e) | ge | ze | de | be | pe |
| オ | コ | ソ | ト | ノ | ホ | モ | ヨ | ロ | ヲ | ゴ | ゾ | ド | ボ | ポ |
| o | ko | so | to | no | ho | mo | yo | ro | wo | go | zo | do | bo | po |
| ン (n) | | | | | | | | | | | | | | |

Հիրականա

| | | | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| あ | か | さ | た | な | は | ま | や | ら | わ | が | ざ | だ | ば | ぱ |
| a | ka | sa | ta | na | ha | ma | ya | ra | wa | ga | za | da | ba | pa |
| い | き | し | ち | に | ひ | み | | り | ゐ | ぎ | じ | ぢ | び | ぴ |
| i | ki | si | ti(tsi) | ni | hi | mi | | ri | wi | gi | zi | di | bi | pi |
| う | く | す | つ | ぬ | ふ | む | ゆ | る | | ぐ | ず | づ | ぶ | ぷ |
| u | ku | su | tu(tsu) | nu | hu | mu | yu | ru | | gu | zu | du | bu | pu |
| え | け | せ | て | ね | へ | め | え | れ | ゑ | げ | ぜ | で | べ | ぺ |
| e | ke | se | te | ne | he | me | ye | re | we(e) | ge | ze | de | be | pe |
| お | こ | そ | と | の | ほ | も | よ | ろ | を | ご | ぞ | ど | ぼ | ぽ |
| o | ko | so | to | no | ho | mo | yo | ro | wo | go | zo | do | bo | po |
| ん (n) | | | | | | | | | | | | | | |

**Ճապոնական գիրը**

Նախապես գրել են չինարեն, ապա սկսել են նշանակել ճապոներեն բառեր, ձևույթներ: Յուրաքանչյուր բառ կարող էր գրվել 5—20 ցանկացած համանիշ նշանով: XII դ. մնացել են համեմատաբար պարզ կտրվածքներով վանկագրերը (կատականա) և դյուրագիծ բոլորգրերը (հիրագանա): 1946-ին մամուլում օգտագործվող հիերոգլիֆների թիվը կրճատվելով հասել է 1800-ի, 700-ի գրությունը պարզեցվել է: Նկատվում է գաղափարագրությունից հնչյունագրության անցնելու միտում: Բառերը չեն սահմանազատվում: Գրությունը՝ վերից վար, աջից ձախ, երբեմն նաև՝ ձախից աջ:

**ՃԱՊՈՆԱԿԱՆ ԾՈՎ,** Խաղաղ օվկիանոսի կիսափակ ծով Եվրասիա մայր ցամաքի, Ճապոնական կղզիների և Սախալին կղզու միջև: Ողողում է ՍՍՀՄ-ի, Կորեայի և Ճապոնիայի ափերը: Ափագծի երկարությունը 7600 *կմ* է (3240 *կմ* ՍՍՀՄ սահմաններում): Կորեական նեղուցով հաղորդակցվում է Արևելա-Չինական և Դեղին ծովերի, Ցուգարու նեղուցով՝ Խաղաղ օվկիանոսի, Լապերուզի և Նևելսկու նեղուցներով՝ Օխոտի ծովի հետ: Երկարությունը 2255 *կմ* է, առավելագույն լայնությունը՝ 1070 *կմ*: Տարածությունը 1062 հզ. *կմ*² է, առավելագույն խորությունը՝ 3699 *մ*, ջրի ծավալը՝ 1630 հզ. *կմ*³: Ափագիծը թույլ է կտրտված: Առավել խոշոր են Պետրոս Մեծի, Արևելա-Կորեական, Իսիկարի, Տոյամա և Վակասու ծոցերը: Հատակի ռելիեֆում առանձնացված են մայրցամաքային առափնյա ծանծաղուտը, մայրցամաքային լանջը, խորջրյա գոգավորությունն ու ստորջրյա բարձրությունները (Յամատո, Կիտա Օկի, Օկի): Սեյսմիկ շրջան է: Օգտակար հանածոներից կան նավթ, գազ, ցրոնային ոսկի, կասիտերիտ: Կլիման բարեխառն է, մուսսոնային: Ծովի հվ-արլ. մասով հաճախ են անցնում թայֆունները: Ձմռանը հս. մասը սառցակալում է: Մակերեսային հոսանքներն առաջանում են Կուրոսիո տաք և Պրիմորիեի սառը հոսանքներից: Զարգացած է ձկնորսությունը: Գլխավոր նավահանգիստներն են Վլադիվոստոկը, Նախոդկան, Ալեքսանդրովսկ—Սախալինսկին (ՍՍՀՄ), Օտարուն, Նշգատան, Ցուրուգան, Մայձուրուն (Ճապոնիա), Վոնսանը, Հիննամը, Չհոնջինը (ԿԺԴՀ):

**ՃԱՊՈՆԱ-ՉԻՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄ 1894—1895,** Ճապոնիայի ագրեսիվ պատերազմը Չինաստանի դեմ՝ Կորեայի նկատմամբ ճապոնական վերահսկողություն հաստատելու և Չինաստան թափանցելու նպատակով: Չինական բանակն ու նավատորմը խոշոր պարտություն կրեցին ցամաքում և ծովում: 1894-ի հոկտեմբերից ռազմ. գործողությունները փոխադրվեցին Հյուսիս-Արևելյան Չինաստանի տարածքը. ճապոնական զորքերը գրավեցին Լյաոդունի թերակղզին, Վեյհայվեյը ևն: 1895-ի ապրիլի 17-ին Չինաստանն ստորագրեց ստորացուցիչ հաշտություն (տես *Սիմոնոսեկիի պայմանագիր 1895*): Պատերազմը սկիզբ դրեց իմպերիալիստական տերությունների կողմից Չինաստանի բաժանմանը և ֆինանսական ստրկացմանը, խթանեց Ճապոնիայի կապիտալիստական զարգացումը, իսկ Տայվան և Պենխուլեդաո կղզիների զավթմամբ հիմք դրվեց ճապոնական գաղութային կայսրությանը:

**ՃԱՊՈՆԱՑԻՆԵՐ,** ազգ, Ճապոնիայի հիմնական բնակչությունը (99%-ից ավելին): Ընդհանուր թիվը՝ 110 մլն (1975): Բնակվում են նաև ԱՄՆ-ում (590 հզ.), Բրազիլիայում (մոտ 600 հզ.), Լատինական Ամերիկայի այլ երկրներում, Կանադայում: Խոսում են *ճապոներեն*: Ճապոնիայում տարածված կրոնը բուդդայականության մահայանա տարատեսակն է (ունի բազմաթիվ աղանդներ), որին զուգահեռ դավանում են սինտոյականություն: Սակավ տարածված են սինկրետիկ «նոր կրոնները», առավել սակավ՝ քրիստոնեությունը: Այժմյան Ճապոնիայում բնակչության մոտ կեսը հավատացյալ չէ: Ճ-ի մեջ տեղական տարբերությունները վերանում են: Ազգագրական յուրահատկությունը պահպանում են միայն որոշ մանր կղզիների և Ռյուկյու արշիպելագի բնակիչները: Ճ. որպես ցեղախումբ ձևավորվել են մ. թ. ա. I հազարամյակի կեսին, Կորեական թերակղզու հվ-ից Ճապոնական կղզիներ տեղափոխված՝ էնեոլիթյան Յայոյի մշակույթի ցեղերի և այնական, մասնավորապես՝ մալայապոլինեզական տեղաբնիկ ցեղերի միաձուլման հետևանքով: IV դ. առաջին համաճապոնական պետության (Յամատո) առաջացման հետ կազմավորվում է ճապոնական ազգությունը: 1867—68-ի բուրժ. հեղափոխությունից հետո Ճ. հանդես են գալիս որպես բուրժ. ազգ: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Ճ. կենցաղով և մշակույթով զգալիորեն մոտեցան եվրոպական ազգերին:

**ՃԱՊՈՆԵՐԵՆ,** *ճապոնացիների* լեզուն, Ճապոնիայի պետական լեզուն: Հնչյունական և քերականական կառուցվածքով մոտ է ալթայան լեզուներին: Խոսողների թիվը՝ մոտ 112 մլն (1976): Տրոհված է բարբառախմբերի՝ արմ. (ընկած է հին գրական Ճ-ի հիմքում) և արլ. (ընկած է ազգային գրական լեզվի հիմքում): Առկա են երկար ու կարճ ձայնավորներ: Բառի մեջ յուրաքանչյուր բաղաձայնին հաջորդում է ձայնավորը: Հնչումով մոտիկ բառերը մոտիկ են նաև իմաստով (mi-ru — նայել և móri — դայակ, nami — ալիքներ և numá — ճահիճ): Շեշտը երաժշտական է և կատարում է իմաստատարբերիչ դեր: Բառային կազմի գրեթե կեսը չինական փոխառություններ են: Ճ. ունի համադրական, անվանական կառուցվածք: Բացակայում են քերականական սեռը, դեմքը, թիվը, հոդը (որոշյալ-անորոշ, ստացական): Գոյականն ունի 12 հոլով (կցականության սկզբունք), բայը՝ 3 սեռի, 10 եղանակի, 3 ժամանակի (թեքականության սկզբունք), կերպի քերականական կարգեր: Արմատները սովորաբար բազմավանկ են (երկու և ավելի): Գրավոր հնագույն հուշարձանները VI—VII դարերից են:

*Գրկ.* Сыромятников Н. А., Становление новояпонского языка, М., 1965; Նույնի, Древнеяпонский язык, М., 1972.



**ՃԱՊՈՆԻԱ** (ճապոներեն՝ Նիպպոն, Նիհոն)

Բովանդակություն

Վարչական բաժանումը

| Վարչական միավորները (պրեֆեկտուրաներ, նահանգապետություն) | Տարածությունը, հզ. *կմ*$^2$ | Բնակչությունը, հզ. մարդ (1975) | Վարչական կենտրոնները |
|---|---|---|---|
| **Հոկայդո կղզի** | | | |
| Հոկայդո | 78,4 | 5338 | Սապպորո |
| **Հոնսյու կղզի** | | | |
| Ակիտա | 11,6* | 1232,5 | Ակիտա |
| Այտի | 5,1 | 5923,1 | Նագոյա |
| Աոմորի | 9,6* | 1468,6 | Աոմորի |
| Գիֆու | 10,6 | 1868,0 | Գիֆու |
| Գումմա | 6,4 | 1756,5 | Մաեբասի |
| Իբարակի | 6,1 | 2342,2 | Միտո |
| Իսիկավա | 4,2 | 1070,9 | Կանաձավա |
| Իվատե | 15,3 | 1385,6 | Մորիոկա |
| Կանագավա | 2,4 | 6397,6 | Յոկոհամա |
| Կիոտո | 4,6 | 2425,8 | Կիոտո |
| Հիոգո | 8,4 | 4991,9 | Կոբե |
| Հիրոսիմա | 8,4 | 2646,4 | Հիրոսիմա |
| Միե | 5,8 | 1626,0 | Ցու |
| Միյագի | 7,3 | 1955,3 | Սենդայ |
| Յամագատա | 9,3 | 1220,3 | Յամագատա |
| Յամագուտի | 6,1 | 1555,2 | Յամագուտի |
| Յամանասի | 4,5 | 783,1 | Կոֆու |
| Նագանո | 13,6 | 2017,0 | Նագանո |
| Նարա | 3,7 | 1077,3 | Նարա |
| Նիիգատա | 12,6 | 2392,0 | Նիիգատա |
| Սայտամա | 3,8 | 4821,4 | Ուրավա |
| Սիգա | 4,0 | 985,5 | Օցու |
| Սիձուոկա | 7,8 | 3308,8 | Սիձուոկա |
| Սիմանե | 6,6 | 768,9 | Մացուե |
| Վակայամա | 4,7 | 1072,1 | Վակայամա |
| Տիբա | 5,1 | 4149,2 | Տիբա |
| Տոկիո | 2,1 | 11700** | Տոկիո |
| Տոյամա | 4,3 | 1070,8 | Տոյամա |
| Տոտիգի | 6,4 | 1698,0 | Ուցունոմիա |
| Տոտտորի | 3,5 | 581,3 | Տոտտորի |
| Օկայամա | 7,1 | 1814,3 | Օկայամա |
| Օսակա | 1,9 | 8278,8 | Օսակա |
| Ֆուկուի | 4,2 | 773,6 | Ֆուկուի |
| Ֆուկուսիմա | 13,8 | 1970,7 | Ֆուկուսիմա |
| **Սիկոկու կղզի** | | | |
| Էհիմե | 5,7 | 1465,2 | Մացույամա |
| Կագավա | 1,9 | 961,3 | Տակամացու |
| Կոտի | 7,1 | 808,4 | Կոտի |
| Տոկուսիմա | 4,1 | 805,1 | Տոկուսիմա |
| **Կյուսյու և Ռյուկյու կղզիներ** | | | |
| Կագոսիմա | 9,2 | 1723,9 | Կագոսիմա |
| Կումամոտո | 7,4 | 1715,0 | Կումամոտո |
| Միյաձակի | 7,7 | 1085,1 | Միյաձակի |
| Նագասակի | 4,1 | 1571,9 | Նագասակի |
| Սագա | 2,4 | 837,7 | Սագա |
| Օիտա | 6,3 | 1190,3 | Օիտա |
| Օկինավա | 2,2 | 1042,5 | Նահա |
| Ֆուկուոկա | 4,9 | 4293,0 | Ֆուկուոկա |

* Առանց Տովադա լճի տարածքի (Ակիտա և Աոմորի պրեֆեկտուրաների սահմանին)
** 1979

### I. Ընդհանուր տեղեկություններ

Ճ. պետություն է Խաղաղ օվկիանոսի հս-արմ. մասում, Արևելյան Ասիայի ծովեզերքին մոտ գրեթե 3,5 հզ. *կմ* ձգվող մի խումբ կղզիների (Հոկայդո, Հոնսյու, Սիկոկու, Կյուսյու, Ռյուկյու են) վրա: Տարածությունը 372,2 հզ. *կմ*$^2$ է, բն.՝ 116 մլն (1979): Մայրաքաղաքը՝ Տոկիո: Վարչականորեն բաժանված է 46 պրեֆեկտուրաների և Հոկայդոյի նահանգապետության:

Քարտեզները տես 72—73-րդ էջերի միջև՝ ներդիրում:

### II. Պետական կարգը

Ճ. սահմանադրական միապետություն է: Գործող սահմանադրությունն ուժի մեջ է 1947-ից: Կայսրը (ըստ սահմանադրության, «պետության և ժողովրդի միասնության խորհրդանիշը») պառլամենտի ներկայացմամբ նշանակում է պրեմիեր մինիստրին, կառավարության ներկայացմամբ՝ գերագույն դատարանի գլխավոր դատավորին ու անդամներին, հաստատում կառավարության անդամների նշանակումը, հրավիրում պառլամենտ են: Ըստ սահմանադրության, կայսրը պետական հարցերը լուծում է կառավարության խորհրդով: Օրենսդրական իշխանության բարձրագույն մարմինը երկպալատ պառլամենտն է (ներկայացուցիչների պալատ, խորհրդականների պալատ): Ընտրական իրավունքից օգտվում են 20 տարին լրացրած բոլոր քաղաքացիները: Պառլամենտի լիազորություններն ընդարձակ են. վերահսկում է կառավարության գործունեությունը, հաստատում միջազգային պայմանագրեր, ունի ֆինանսները տնօրինելու բացարձակ իրավունք: Գործադիր իշխանության բարձրագույն մարմինը կառավարությունն է (մինիստրների կաբինետ): Տեղական կառավարման մարմինները պրեֆեկտուրային, քաղաքային, ավանային և գյուղական ժողովներն են: Դատական համակարգը կազմում են գերագույն դատարանը (ունի նաև սահմանադրական դատարանի ֆունկցիաներ), ապելյացիոն, տեղական (իրենց բաժանմունքներով), ընտանեկան (իրենց բաժանմունքներով) և կարգապահական դատարանները:

### III. Բնությունը

Ճ. ողողվում է Խաղաղ օվկիանոսի, Արևելա-Չինական, Ճապոնական և Օխոտի ծովերի ջրերով: Ափագծի ընդհանուր երկարությունը մոտ 30 հզ. *կմ* է: Տարածքի 3/4-ից ավելին զբաղեցնում են բարձրությունները ու լեռները. դաշտավայրերի առանձին տեղամասեր կան ծովեզերքին (խոշորագույնը Կանտոյի կամ Տոկիոյի դաշտավայրն է): Հոկայդո կղզում առավել բարձր լեռները գտնվում են նրա կենտրոնական մասում (ամենաբարձրը՝ Ասահի լեռ, 2290 *մ*): Հոնսյու կղզու հս. մասում առանցքային դիրք է գրավում Օու լեռնաշղթան, միջին մասով անցնում է Ֆոսսա Մագնա բեկվածքների գոտին (երկարությունը՝ մոտ 250 *կմ*), որտեղ կան հրաբուխներ, այդ թվում՝ Ֆուձիյամա լեռը (3776 *մ*, Ճ-ում ամենաբարձր կետը), կենտրոնական մասում ձգվում են Հիդա, Կիսո, Ակաիսի լեռնաշղթաները (2900—3192 *մ*): Կղզու հվ-արմ-ում են գտնվում Կինկի հարթավայրն ու Բիվա լիճը: Սիկոկու կղզու ամենաբարձր կետը Իսիձուչի լեռն է (1981 *մ*), Կյուսյու կղզում՝ Կուձյու հրաբուխը (1788 *մ*): Ռյուկյու կղզիներում գերակշռում են սարավանդներն ու ցածր լեռները:

**Երկրաբանական կառուցվածքը և օգտակար հանածոները**: Ճապոնական կղզիների աղեղը մտնում է Արևմտախաղաղօվկիանոսյան գեոսինկլինալային գոտու կազմի մեջ: Ճ-ի հս-արմ. և հվ. եզրամասերը կազմված են մեզոկայնոզոյան ծալքավոր նստվածքային, առանցքային և հվ-արլ. գոտիները՝ մետամորֆային պալեոզոյան հաստույթներից, որտեղ կան բազմաթիվ ներժայթուկներ: Ծալքավոր կառուցվածքները, որոնք սկսել են ձևավորվել պալեոզոյից, հիմնականում ստեղծվել են մեզոզոյում, Հոկայդոյում՝ կայնոզոյում: Ճ-ի տարածքին բնորոշ է բարձր սեյսմիկությունը (ավերիչ երկրաշարժեր են եղել 1855-ին, 1891-ին, 1897-ին, 1923-ին ավերվել է Տոկիոն) և գործուն հրաբխականությունը (կա շուրջ 150 հրաբուխ, որոնցից 40-ը՝ գործող): Հրաբխային ըրջանները հարուստ են հանքային աղբյուրներով: Օգտակար հանածոներից կա ածուխ, ծծումբ, երկաթի, մանգանի, կապարի, ցինկի, պղնձի հանքաքար, նավթ, քրոմիտներ, ինչպես նաև ոսկի, արծաթ և սնդիկ:

**Կլիման** մուսսոնային է, հս-ում՝ բարեխառն, հվ-ում՝ մերձարևադարձային, Ռյուկյու կղզիների մեծ մասում՝ արևադարձային: Հոկայդո կղզում, Սապպորոյում հունվարի միջին ջերմաստիճանը —5°C է,

հուլիսինը՝ 22°C, Ճապոնական կղզիների հվ-ում, Կագոսիմայում, համապատասխանաբար՝ 6°C և 27°C, Օկինավայում (Ռյուկյու կղզիներ)՝ 16°C և 28°C: Ձմեռային մուսսոնը բերում է սառնություն և ձյունառատ ձմեռներ Հոնսյու և Հոկայդո կղզիների արմ. ափերին: Ամառային մուսսոնն ավելի թույլ է արտահայտվում: Ամառային անձրևային սեզոնը տևում է հունիսի կեսերից մինչև հուլիսի կեսերը: Աշնանը հաճախակի են թայֆունները: Տարեկան տեղումները 800—3000 *մմ* են: Կուրոսիո և Ցուսիմա ծովային հոսանքները տաքացնում են Ճապոնական կղզիների հվ., հս-արմ. ու արմ. ափերը, Օյասիոն, ընդհակառակը, սառեցնում է հս-արլ. ափերը:

**Ներքին ջրերը:** Ճ. ունի կարճ, բայց ջրառատ գետերի խիտ ցանց: Առավել խոշոր գետերն են Իսիկարին (Հոկայդո կղզում), Սինանոն, Տոնեն և Կիտակամին (Հոնսյու կղզում): Երկրի հիդրոէներգետիկական ռեսուրսները գնահատվում են 52,7 մլն *կվտ*, որից յուրացված է 21,8 մլն (1975): Լճերից ամենամեծը Բիվան է (716 *կմ*²):

**Հողերը, բուսական և կենդանական աշխարհը:** Ճ-ի հս-ում տարածված են պոդզոլային և մարգագետնաճահճային, բարեխառն գոտու հվ. մասում՝ գորշ անտառային հողեր, մերձարևադարձերում և արևադարձերում՝ դեղնահողեր ու կարմրահողեր: Ճ-ի տարածքի 2/3-ից ավելին զբաղեցնում են անտառներն ու թփուտները: Պահպանվել են մինչչորրորդական հին ֆլորայի բազմաթիվ ներկայացուցիչներ (պտերներ, ձիաձետներ ևն):

Հոկայդո կղզում մինչև 500 *մ* բարձրությունները գերակշռում են փշատերև անտառները, ավելի բարձր՝ մայրու մացառուտներն ու կեչուտները: Հոնսյու կղզում փշատերև անտառները բարձրանում են մինչև 1800—2000 *մ*: Ճ-ի ավելի հվ. շրջաններում փշատերև ծառատեսակներն աստիճանաբար իրենց տեղը զիջում են տերևաթափ լայնատերև տեսակներին: Հոնսյու կղզու հվ. մասի և Սիկոկու ու Կյուսյու կղզիների լեռնալանջերին հանդիպում են մշտադալար մերձարևադարձային անտառներ: Կյուսյու կղզու ծայր հվ-ում և Ռյուկյու կղզիներում աճում են արմավենիներ, ֆիկուսներ, ծառանման պտերներ, հնդկեղեգներ, խոլորձներ: Ճ-ի ֆաունան ընդգրկում է էնդեմիկ և ռելիկտային շատ տեսակներ. գերակշռում են լեռնային անտառների կյանքին հարմարվածները: Հանդիպում են գայլ, աղվես, գորշուկ, ենոտանման շուն, ջրասամույր, նապաստակ, արջ, սամույր, կնգում, աքիս, ճապոնական մակակ, այծքաղ, հսկա սալամանդր, ցատկող շներ ևն: Կան բազմատեսակ թռչուններ, միջատներ ու ձկներ: Կատարվում է նաև ծովախեցգետնի, կրևետի, ոստրեի որսամթերում: Ստեղծվել են 23 (1977) ազգային պարկեր և պետ. արգելավայրեր, ինչպես նաև շուրջ 40 (1976) ստորջրյա ազգային պարկեր:

### IV. Բնակչությունը

Ճ. բնակչության թվով աշխարհում գրավում է 6-րդ տեղը: 99%-ը *ճապոնացիներ* են: Հոկայդո կղզում պահպանվել են երկրի հնագույն բնակիչների՝ *այների* մնացորդներ (շուրջ 20 հզ. մարդ): Ապրում են նաև կորեացիներ, չինացիներ և այլք: Պաշտոնական լեզուն ճապոներենն է: Հիմնական կրոններն են սինտոյականությունը (մինչև 1945-ը՝ պետ. կրոն) և բուդդայականությունը, որոշ տարածում է ստացել քրիստոնեությունը: Տոմարը՝ գրիգորյան (1873-ից): Բնական աճը 1,4% է (1975): Տնտեսապես ակտիվ բնակչությունը 52,2 մլն է (1975), միջին խտությունը 1 *կմ*² վրա՝ 309 մարդ (1978), քաղաքային բնակչությունը՝ 75% (1975): Երկրում կա միլիոնից ավելի բնակչություն ունեցող 10 քաղաք: Առավել խոշոր քաղաքներն են Տոկիոն, Օսական, Յոկոհաման, Նագոյան: Քաղաքների տարածքի ընդարձակման հետևանքով ձևավորվել են մի շարք մեգալոպոլիսներ, որոնցից առավել խոշորներն են՝ Կեյհին Կեյյո (Տոկիո, Կավասակի, Յոկոհամա, Տիբա և այլ քաղաքներ՝ 27 մլն բնակչով), Հանսին (Օսակա, Կոբե, Կիոտո քաղաքները՝ 17 մլն բնակչով):

### V. Պատմական ակնարկ

Մ. թ. ա. մոտ 7500 — մոտ 300-ին Ճ-ի տարածքում գոյություն է ունեցել նոր քարեդարյան Ջ ո մ ո ն մշակույթը, նրան փոխարինել է Յ ա յ ո ի մշակույթը (մ. թ. ա. III—մ. թ. III դդ.), որին բնորոշ էր զարգացող երկրագործությունը, անասնապահությունը և մետաղե գործիքների կիրառումը: Մ. թ. առաջին դարերից ուժեղացել է սոցիալական շերտավորումը, երևան են եկել ստրուկներ: Մեծ իշխանություն ուներ գյուղի (տոհմի) ավագը, որը տնօրինում էր նաև պաշտամունքի՝ վաղ սինտոյի (տես *Սինտոյականություն*) գործերը: III դ. կազմավորվել է Յ ա մ ա տ ո ցեղային միությունը, որի հիման վրա ձևավորվել է ճապոնական պետականությունը: VI դարից Ճ-ում սկսել է տարածվել *բուդդայականությունը*: 645-ի, այսպես կոչված, Տայկայի (բառացի՝ մեծ բարեփոխում) հեղաշրջումից հետո Ճ-ում ըստեղծվեց վաղ ֆեոդալական կենտրոնացված պետություն, որը հենվում էր հողի պետ. ֆեոդալական սեփականության և գյուղացիության բաժնեհողային հողօգտագործման համակարգի վրա: 710-ին կառուցվեց առաջին մշտական մայրաքաղաքը՝ Նարան [784-ին տեղափոխվել է Նագաոկա, 794-ին՝ Հեյան (այժմ՝ Կիոտո)]: X դ. հաստատվեց հողի մասնավոր ֆեոդալական սեփականությունը. տիրապետող ձևը դարձավ ֆեոդալական կալվածքը (սյոեն): 1192-ին իշխանությունն անցավ սյոգուններին (տես *Սյոգունություն*) [Մինամոտոներ (1192—1333), Ասիկագաներ (1335—1573), Տոկուգավաներ (1603—1867)], որոնք հենվում էին ռազմաֆեոդալական խավի (բուսի) և հատկապես սյոգունի անձնական վասալների վրա (վերջիններս զբաղեցնում էին վարչական պաշտոնները): Բուսի խավի ստորին աստիճանին կանգնած էին զինվորական մանր ազնվականները՝ *սամուրայները*:

1274-ին և 1281-ին մոնղ. Խուբիլայ խանը, որը նվաճել էր Չինաստանն ու Կորեան, երկու արշավանք ձեռնարկեց Ճ-ի դեմ, որոնք ձախողվեցին: XIV—XVI դդ. ֆեոդալական միջին հողատիրությունն իր տեղը զիջեց խոշոր հողատիրությանը՝ իշխանություններին (իշխանի՝ դայմյոյի գլխավորությամբ): Խոշոր տիրույթների երևան գալը նպաստեց ֆեոդալական մասնատվածության ուժեղացմանը: XV—XVI դդ. Ճ-ում անընդհատ տեղի էին ունենում գյուղացիական ապստամբություններ: XVI դ. Ասիկագաների կենտրոնական կառավարությունը լիովին կորցրեց իր իշխանությունը երկրում:

XV—XVI դդ. Ճ. լայն առևտուր էր անում Չինաստանի և Կորեայի հետ: XVI դ. Ճ-ում երևացին եվրոպացիները (1542-ին՝ պորտուգալացիները, 1584-ին՝ իսպանացիները), որոնք առևտուր անելուն զուգընթաց տարածում էին քրիստոնեություն: Չդադարող գյուղացիական ելույթների պայմաններում ֆեոդալական վերնախավի շրջանում ուժեղացավ պետությունը միավորելու և կենտրոնական ուժեղ իշխանություն հաստատելու ձգտումը: Միավորման շարժումը գլխավորեցին զորավարներ Նոբունագա Օդան (1534—82), Հիդեյոսի *Տոյոտոմին* (1536—98) և Իեյասու *Տոկուգավան* (1542—1616), որն էլ ավարտեց երկրի միավորումը: Տոկուգավաների օրոք Ճ. կենտրոնացված ֆեոդալական բացարձակապետություն էր:

XVII դ. 30-ական թթ. արգելվեց օտարերկրացիների մուտքը Ճ. և ճապոնացիների ելքը արտասահման, միջոցներ ձեռնարկվեցին քրիստոնեության (որը դառնում էր ժող. շարժման գաղափարախոսություն) տարածման դեմ: XVIII դ. սկզբին Ճ-ում երկարատև ճգնաժամ սկսվեց, որի պատճառը ֆեոդալական կարգերի քայքայումն էր: 1601—1867-ին Ճ-ում տեղի է ունեցել 1640 գյուղացիական ելույթ: Երկրում աստիճանաբար զարգանում էր կապիտալիստական կացութաձևը: XIX դ. 50—60-ական թթ. Ճ. դարձավ ԱՄՆ-ի և եվրոպական տերությունների էքսպանսիայի օբյեկտ: Զենքի գործադրման սպառնալիքի տակ (Մ. Պերրիի էսկադրայի ուղարկումը) ԱՄՆ հասավ այն բանին, որ Սիմոդա և Հակոդատե նավահանգիստները բացվեցին օտարերկրյա նավերի համար: 1854—58-ին կնքվեցին մի շարք անհավասար պայմանագրեր, որոնք Ճ. ներքաշեցին համաշխարհային շուկայի մեջ: 1867—68-ին տեղի ունեցավ բուրժ. հեղափոխություն (տես *«Մեյձի» հեղափոխություն*), սյոգունի կառավարությունը տապալվեց, և իշխանությունն անցավ բուրժուա-կալվածատիրական խմբավորմանը (կայսերական կառավարություն): Հեղափոխությունից հետո Ճ. թևակոխեց կապիտալիզմի ժամանակաշրջանը, որի զարգացման վրա խիստ ազդում էին ֆեոդալական մնացուկները: 1872—73-ին անցկացվեց հողային ռեֆորմ, որն օրենսդրորեն ամրապնդեց հողի մասնավոր սեփականությունը. հողը հիմնականում մնաց, այսպես կոչված, նոր կալվածատերերի և ունևոր գյուղացիության ձեռքին: XIX դ. 90-ական թթ. Ճ-ում սկսեց զարգանալ կազմակերպված բանվորական շարժումը:

XIX—XX դդ. սահմանագլխին ճապոնական կապիտալիզմը թևակոխեց իմպերիալիզմի փուլը, որը Ճ-ում կրում էր ռազմաֆեոդալական բնույթ: 1894—95-ին Ճ. թալանչիական պատերազմ մղեց Չինաստա-

նի դեմ (տես *Ճապոնա-չինական պատերազմ 1894—1895*), սանձազերծեց պատերազմ նաև Ռուսաստանի դեմ (տես *Ռուս-ճապոնական պատերազմ 1904—1905*) և իր պրոտեկտորատը հաստատեց Կորեայի նկատմամբ, իսկ 1910-ին բռնակցեց այն՝ վերածելով գաղութի: Առաջին համաշխարհային պատերազմի (1914—18) ժամանակ, 1914-ին պատերազմի մեջ մտնելով Անտանտի կողմում, Ճ. կարևոր քաղ. ու տնտ. դիրքեր նվաճեց Չինաստանում: Դասակարգային պայքարի սրման հետևանքով 1918-ին Ճ-ում տեղի ունեցան աշխատավորների զանգվածային հեղափոխական ելույթներ, այսպես կոչված, «բրնձային ապստամբություններ», որոնք ընդգրկեցին երկրի տարածքի երկու երրորդը: 1922-ին ստեղծվեց Ճ-ի կոմունիստական կուսակցությունը: 1918—22-ին ճապոնական իմպերիալիստները ինտերվենցիա կազմակերպեցին սովետական Հեռավոր Արևելքում, բայց ջախջախվեցին: Իմպերիալիստական հակասությունների (Մեծ Բրիտանիայի և ԱՄՆ-ի հետ) խորացման պայմաններում Ճ. համաձայնագրեր ստորագրեց (1925) Սովետական Միության հետ և իր զորքերը դուրս բերեց Հյուսիսային Սախալինից: Երկրորդ համաշխարհային պատերազմի նախապատրաստման ու սանձազերծման ժամանակաշրջանում Ճ. բոլորից շուտ դիմեց ագրեսիայի: 1931-ին ճապոնական միլիտարիստները զավթեցին Չինաստանի հս-արլ. նահանգները (Մանջուրիա): 1932—36-ին նրանք ընդլայնեցին ագրեսիան Չինաստանի դեմ, 1933-ին Ճ. դուրս եկավ Ազգերի լիգայից, հիտլերյան Գերմանիայի հետ նախաձեռնեց և ստեղծեց «*Հակակոմինտերնյան պակտը*» (1936): 1937-ի հուլիսին Ճ. պատերազմ սանձազերծեց ամբողջ Չինաստանը զավթելու համար: Սովետական Միությունը Չինաստանին ցույց տվեց նյութական ու բարոյական մեծ օգնություն, իսկ ԱՄՆ-ը, Մեծ Բրիտանիան ու Ֆրանսիան զիջումներ արեցին ճապոնական իմպերիալիստներին: 1937—1940-ին Ճ. զավթեց Չինաստանի կենտրոնական նահանգները, խուժեց Հնդկաչին և ռազմ. խոշոր պրովոկացիաներ կազմակերպեց Սովետական Միության ու ՄԺՀ սահմաններին (Խասան լճի շրջանում՝ 1938-ին, Խալխին-գոլ գետի վրա՝ 1939-ին ևն):

Երկրորդ համաշխարհային պատերազմին (1939—45) Ճ. մասնակցեց որպես հիտլերյան Գերմանիայի և ֆաշիստական Իտալիայի դաշնակից: Չեզոքության պայմանագիր կնքելով (1941-ի ապրիլ) Սովետական Միության հետ՝ Ճ. խախտեց այն՝ միլիոնանոց բանակ կենտրոնացնելով սովետական սահմաններին, սպասելով հարձակվելու հարմար առիթի: Իր իմպերիալիստական ախոյաններին (ԱՄՆ և Մեծ Բրիտանիա) Ասիայից և Խաղաղ օվկիանոսից դուրս մղելու նպատակով Ճ. առանց պատերազմ հայտարարելու 1941-ի դեկտ. 7-ին հարձակվեց նրանց խաղաղօվկիանոսյան բազաների (Փյորլ Հարբոր ևն) վրա: 1942-ի կեսին օկուպացրեց Ֆիլիպինները, Հնդկաչինը, Թաիլանդը, Բիրման, Մալայան և Ինդոնեզիան (Խաղաղ օվկիանոսում ռազմ. գործողությունների մասին տես *Խաղաղօվկիանոսյան կամպանիաներ 1941—1945*): Նկատի ունենալով պայմանագրային պարտավորությունների սիստեմատիկ խախտումները Ճ-ի կողմից՝ Սովետական Միությունը 1945-ի ապրիլի 5-ին չեղյալ հայտարարեց չեզոքության վերաբերյալ սովետա-ճապոնական պայմանագիրը և, ի կատարումն իր դաշնակցային պարտականությունների, 1945-ի օգոստ. 8-ին պատերազմ հայտարարեց Ճ-ին ու միացավ ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի և Չինաստանի՝ Պոտսդամի դեկլարացիային (1945-ի հուլիսի 26), որը պահանջում էր Ճ-ի անվերապահ կապիտուլյացիա: Սովետական զորքերը կարճ ժամանակամիջոցում ջախջախեցին թշնամու Կվանտունյան բանակը և ազատագրեցին Մանջուրիան, Հյուսիսային Կորեան, Հարավային Սախալինն ու Կուրիլյան կղզիները: 1945-ի օգոստոսին ԱՄՆ-ի ռազմաօդային ուժերը ատոմային ռումբեր նետեցին Հիրոսիմա (օգոստ. 6-ին) և Նագասակի (օգոստ. 9-ին) քաղաքների վրա:



Ատոմային ռմբակոծության զոհերի հուշարձանը Հիրոսիմայի Խաղաղության մեմորիալ կենտրոնում (1949—56, ճարտ. Կ. Տանգե), ֆրագմենտ

Այդ ռմբակոծությունները ռազմ. անհրաժեշտությունից չէին բխում և ավելի շուտ քաղ. նպատակներ էին հետապնդում: 1945-ի սեպտ. 2-ին Ճ. ստորագրեց անվերապահ կապիտուլյացիայի ակտը:

Պատերազմից հետո Ճ. օկուպացրեցին ԱՄՆ-ի զինված ուժերը: ԱՄՆ-ը, խախտելով Պոտսդամի դեկլարացիան (Ճ-ի ապառազմականացման և դեմոկրատացման մասին), ճնշում էին Ճ-ի դեմոկրատական շարժումն ու երկիրը կախման մեջ դնում ամերիկյան իմպերիալիզմից: Միջազգային դեմոկրատական ուժերի ճնշման տակ և ճապոնական աշխատավորների պայքարի հետևանքով 1946—49-ին Ճ-ում անցկացվեցին մի շարք դեմոկրատական բարեփոխումներ. ընդլայնվեց ընտրական իրավունքը (1946), ընդունվեց նոր սահմանադրություն (1947), որը սահմանափակում էր կայսեր իրավունքներն ու արգելում պատերազմը՝ որպես միջազգային հարցերի լուծման միջոցի, և այդ նպատակով արգելում զինված ուժերի ստեղծումը, անցկացվեց ագրարային ռեֆորմ, որը հիմնականում վերացրեց կալվածատիրական հողատիրությունը, մտցվեց բանվորական նոր օրենսդրություն ևն: 1948-ի վերջից ԱՄՆ սկսեցին վերազինել Ճ.՝ այն դարձնելով իրենց հիմնական ռազմաստրատեգիական բազան Հեռավոր Արևելքում: Սան Ֆրանցիսկոյի հաշտության պայմանագրով (1951) ձևականորեն Ճ-ին վերադարձվեց նրա սուվերենությունը, միաժամանակ ԱՄՆ Ճ-ին պարտադրեց ճապոնա-ամերիկյան «անվտանգության պայմանագիրը», որը ԱՄՆ-ին իրավունք էր տալիս ռազմ. բազաներ ստեղծել Ճ-ի տարածքում և անորոշ ժամկետով ամերիկյան զորքեր պահել այնտեղ: 1956-ին կնքվեց սովետա-ճապոնական համատեղ դեկլարացիա, որով դադարեցվեց պատերազմական վիճակը երկու երկրների միջև և հաստատվեցին դիվանագիտական հարաբերություններ: 1956-ին Ճ. ընդունվեց ՄԱԿ-ի մեջ:

1950—60-ական թթ. Ճ-ի տնտեսությունը արագ վերելք ապրեց, որը հետևանք էր աշխատավորների շահագործման ուժեղացման ու արտադրության մեջ գիտատեխնիկական նվաճումների լայն օգտագործման: 1960-ական թթ. վերջին ազգային համախառն արդյունքի և արդ. արտադրանքի ծավալով Ճ. դուրս եկավ 2-րդ տեղը (ԱՄՆ-ից հետո) կապիտալիստական աշխարհում: Մեծացավ Ճ-ի դերը համաշխարհային քաղաքականության մեջ: 1960-ին կնքվեց փոխօգնության և անվտանգության ճապոնա-ամերիկյան պայմանագիր, որը փոխարինեց 1951-ի պայմանագրին: Նոր պայմանագիրը (երկարաձգվել է 1970-ին) ամրապնդեց ԱՄՆ-ի իրավունքը՝ Ճ-ում պահելու իրենց բազաներն ու զինված ուժերը: Ճ. քաղ., դիվանագիտական և նյութատեխնիկական լայն օժանդակություն ցույց տվեց ԱՄՆ-ին վիետնամական պատերազմում: 1972-ին ԱՄՆ Ճ-ին վերադարձրեցին Ռյուկյու կղզիները՝ Օկինավա գլխավոր կղզով հանդերձ:

Ճապոնական տնտեսության արագ թափը 1960—70-ական թթ. հանգեցրին տնտ. և սոցիալական հակասությունների հետագա սրման: 1975-ին արդ. արտադրանքի ծավալը կրճատվեց 10,9%-ով, 1974-ի համեմատ, գործազուրկների թիվը կազմեց 1,1 մլն, ուժեղացավ ինֆլյացիան, վերելք ապրեց բանվորական ու դեմոկրատական շարժումը: 1955-ից կառավարող լիբերալ-դեմոկրատական կուսակցության (ԼԴԿ) դիրքերը թուլացան (1976-ի պառլամենտական ընտրություններում ԼԴԿ-ի օգտին քվեարկեց ընտրողների ընդամենը 41,8%-ը): 1978-ի օգոստոսին Ճ. ՉԺՀ-ի հետ կնքեց խաղաղության և բարեկամության պայմանագիր՝ նրա մեջ մտցնելով «հեգեմոնիզմի» դեմ պայքարի կետ, որին չինական ղեկավարությունը տալիս է հակասովետական ուղղվածություն:

1956-ի սովետա-ճապոնական դեկլարացիայից հետո էական զարգացում են ստացել ՍՍՀՄ-ի և Ճ-ի բազմակողմանի կապերը. կնքվել են մի շարք համաձայնագրեր՝ առևտրական (1957), ծովային (1958)

և օդային (1966) հաղորդակցությունների, քաղ., տնտ. ու գիտատեխնիկական համագործակցության (1973), փոխհատուցման սկզբունքով անտառների, ածխահանքերի, նավթի ու գազի արդյունահանման (1974—76) ևն վերաբերյալ: Սակայն բարիդրացիական հարաբերությունների հետագա զարգացման ճանապարհին (այդ թվում՝ հաշտության պայմանագրի կնքման) դժվարություններ են հարուցում Ճ-ի անհիմն ու անօրինական տերիտորիալ պահանջները (Կուրիլյան մի շարք կղզիներ) Սովետական Միությունից:

**VI. Քաղաքական կուսակցությունները, արհմիությունները և հասարակական այլ կազմակերպություններ**

Լիբերալ-դեմոկրատական կուսակցություն (ԼԴԿ), կառավարող կուսակցությունն է, հիմնվել է 1955-ին, արտահայտում է խոշոր մոնոպոլիստական կապիտալի և բյուրոկրատական վերնախավի շահերը: Ճապոնիայի սոցիալիստական կուսակցություն (ՃՍԿ), ստեղծվել է 1945-ին, հենվում է բանվորների և ազգաբնակչության միջին խավերի մի մասի վրա: Կոմեյտո (Մաքուր քաղաքականության կուսակցություն), ստեղծվել է 1964-ին, որպես բուդդայական Սոկագակկայ (արժեքների հաստատման) ընկերության քաղ. կազմակերպություն. հենվում է գլխավորապես չկազմակերպված բանվորների և մանր ձեռնարկատերերի վրա: Դեմոկրատական սոցիալիզմի կուսակցություն (ԴՍԿ), ստեղծվել է 1960-ին. հենվում է բանվորների և քաղաքային մանր բուրժուազիայի մի մասի վրա:

Ճապոնիայի կոմունիստական կուսակցություն (ՃԿԿ), հիմնվել է 1922-ին, մինչև 1945-ը գործել է ընդհատակում, ունի 400 հզ. անդամ (1978):

Ճապոնիայի արհմիությունների գլխավոր խորհուրդ (Սոհյո), ստեղծվել է 1950-ին, ակտիվ պայքար է մղում աշխատավորության շահերի և իրավունքների համար, ունի ավելի քան 4,5 մլն անդամ (1978): Աշխատանքի համաճապոնական կոնֆեդերացիա (Դոմեյ), ստեղծվել է 1964-ին, ունի 2,2 մլն անդամ (1978): Անկախ արհմիությունների կապի խորհուրդ (Տյուրիցու Ռոբեն), ունի մոտ 1,3 մլն անդամ (1978): Պառլամենտի դեպուտատների ասոցիացիա հանուն ճապոնա-սովետական բարեկամության, միավորում է պառլամենտի դեպուտատների բոլոր քաղ. կուսակցություններից: Արտասահմանյան երկրների հետ մշակութային կապերի ճապոնական ասոցիացիա: «Ճապոնիա—ՍՍՀՄ» ընկերություն: Ճապոնա-սովետական բարեկամության ընկերություն: Ճապոնա-սովետական կապերի ընկերություն:

**VII. Տնտեսա-աշխարհագրական ակնարկ**

Ճ. կապիտալիստական բարձր զարգացած ինդուստրիալ երկիր է: Նախապատերազմյան մակարդակը վերականգնելուց հետո, 50-ական թթ. սկզբին, նրա տնտեսության աճի տեմպերը զարգացած կապիտալիստական երկրների մեջ ամենաբարձրն էին: 1969-ից ազգային համախառն արդյունքի և արդ. արտադրության ծավալով կապիտալիստական աշխարհում զիջում է միայն ԱՄՆ-ին: Ճ-ի բաժինը համաշխարհային կապիտալիստական արտադրության մեջ 1977-ին կազմել է 9,6%, արտաքին առևտրում գրավում է 3-րդ տեղը (ԱՄՆ-ից և ԳՖՀ-ից հետո), արտասահմանյան կապիտալ ներդրումների չափերով՝ 4-րդ տեղը (ԱՄՆ-ից, Մեծ Բրիտանիայից և ԳՖՀ-ից հետո):

Ճ-ի տնտեսությանը բնորոշ է արտադրության և կապիտալի համակենտրոնացման բարձր աստիճանը: Մոնոպոլացված են սև և գունավոր մետալուրգիան, նավթաքիմիան, նավաշինությունը, ավտոմոբիլաշինությունը, արհեստական մանրաթելի արտադրությունը, սննդի արդյունաբերությունը: Մետալուրգիական 3 խոշոր ընկերություններ՝ «Սիննիպպոն սեյտեցու», «Նիպպոն կոկան» և «Կավասակի սեյտեցու», արտադրում են թուջի և պողպատի շուրջ 70%-ը, գլոցվածքի 60%-ը, «Տոյոտա ձիդոսյա» և «Նիսսան ձիդոսյա» ընկերությունները՝ ավտոմոբիլների ավելի քան 90%-ը:

1970-ական թթ. կեսերին կապիտալիստական երկրներն ընդգրկած տնտ., վալյուտային, էկոլոգիական, ինֆլյացիոն և էներգետիկական ճգնաժամերը տնտ. լուրջ բարդություններ առաջացրին Ճ-ում, որը խոշոր կապիտալիստական գլխավոր երկրների մեջ ամենից շատ է կախված հումքային և էներգետիկական արտաքին աղբյուրներից:

**Արդյունաբերությունը:** Արդյունահանող արդյունաբերության մեջ մեծ նշանակություն ունի ածխարդյունահանությունը: Սկսվել է բնական գազի արդյունահանումը: Նավթի տեղական արդյունահանումն աննշան է: Սեփական երկաթի հանքաքարը ծածկում է պահանջարկի մոտ 10%-ը: Արդյունահանում են նաև պղինձ, պիրիտներ, ցինկ, կապար, կաոլին, տալկ, բնածին ծծումբ, քիչ քանակությամբ՝ մանգան, քրոմիտներ, բիսմութ, պլատին ևն: Սակայն օգտակար հանածոների մեծ մասի իր պահանջարկը Ճ. հիմնականում բավարարում է ներմուծման հաշվին:

Էներգետիկական հաշվեկշռում 1970-ական թթ. կեսերին 75%-ը բաժին էր ընկնում նավթին, 18,5%-ը՝ քարածխին, մնացածը՝ այլ աղբյուրների: Էլեկտրակայանների հաստատված հզորությունը 1977-ին կազմել է 81,5 մլն *կվտ*, այդ թվում՝ 50,5 մլն *կվտ*՝ ՋԷԿ-երի, 23 մլն *կվտ*՝ ՀԷԿ-երի, 8 մլն *կվտ*՝ ԱԷԿ-երի:

Ճ-ի մշակող արդյունաբերության ճյուղերից սև մետալուրգիան արտադրության ծավալով կապիտալիստական երկրների մեջ գրավում է 2-րդ տեղը (ԱՄՆ-ից հետո): 1977-ին ներմուծվել է 115 մլն *տ* երկաթի հանքաքար, ավելի քան 60 մլն *տ* ածուխ: Սև մետալուրգիայի առավել կարևոր կենտրոններն են Կիտակյուսյուն, Օսակայի ագլոմերացիան, Նագոյան, Տոկիոյի ագլոմերացիան (գլխավոր կենտրոնը՝ Կավասակի) և Տիբան:

Գունավոր մետալուրգիայի ավանդական ճյուղերից են պղնձի, ցինկի և կապարի արտադրությունը: Ճ. կապիտալիստական աշխարհում 2-րդ տեղն է գրավում ալյումինի արտադրությամբ, բայց նաև մեծ քանակությամբ ներմուծում է (տարեկան 300—370 հզ. *տ*): Արտադրվում է նաև մագնեզիում, տիտան, նիկել, հազվագյուտ մետաղներ:

Առանձնապես արագ տեմպերով է զարգանում մեքենաշինությունը: Նավաշինությամբ և նավերի արտահանմամբ Ճ. աշխարհում գրավում է 1-ին տեղը: 1976-ին նրան բաժին էր ընկնում ջրարկված նավերի համաշխարհային տոննաժի ավելի քան 1/2-ը: Կառուցվող նավերի 1/2-ից ավելին արտահանվում է: Էլեկտրատեխնիկական և էլեկտրոնային արդյունաբերությունն արտադրում է կենցաղային և գիտաարտադրական բազմազան ապարատուրա: Ռադիոէլեկտրոնային արդյունաբերության արտադրանքից արտաքին շուկայում լայն սպառում են գտնում գունավոր հեռուստացույցները, էլեկտրոնային հաշվողական փոքր մեքենաները: Ավտոմոբիլաշինությամբ Ճ. կապիտալիստական աշխարհում գրավում է 2-րդ տեղը: Զարգացած է տրակտորաշինությունը, մետաղահատ հաստոցների և դարբնոցամամլիչ սարքավորման, ճշգրիտ գործիքների և մեխանիզմների, գնդառանցքակալների, բժշկ. և օպտիկական սարքավորման արտադրությունը: Մեքենաշինությունն առավելապես տեղաբաշխված է Տոկիո—Կավասակի—Յոկոհամա, Նագոյա, Օսակա—Կոբե քաղաքների շրջանում: Խոշոր նավաշինարաններ կան Նագասակիում:

Քիմ. արդյունաբերությունը, հանքային պարարտանյութերի, արհեստական մանրաթելի ավանդական արտադրությունից բացի, աչքի է ընկնում նավթամթերքներից ստացվող սինթետիկ նյութերի (պլաստմասսաներ, սինթետիկ մանրաթելեր և կաուչուկ) արտադրությամբ: Զգալիորեն զարգացել է նավթավերամշակումը (նավթամթերքների արտադրության ընդհանուր ծավալը 1976-ին կազմել է 192 մլն *տ*): Զարգացած է բուժիչ պատրաստուկների, վիտամինների, գյուղատնտ. բույսերի պաշտպանության միջոցների արտադրությունը: Քիմ. արդյունաբերության տեղաբաշխման հիմնական շրջաններն են Տոկիոյի ծոցի ափը, Նագոյայի շրջանը և Հոնսյու կղզու արմ. ծայրամասը:

Ճ-ում տարեկան մթերվում է շուրջ 35—37 մլն $մ^3$ բնափայտ, որն ապահովում է երկրի պահանջարկի 40—45%-ը: Առավել խոշոր են ներմուծվող բնափայտ օգտագործող փայտաասղոցման ձեռնարկությունները, որոնք գտնվում են մեծ նավահանգիստների շրջանում (Հիրոսիմա, Օկայամա ևն): Զարգացած է խեմի (ֆաներա), թղթի և ստվարաթղթի արտադրությունը:

Մեծ է տեքստիլ արդյունաբերության նշանակությունը, որը թողարկում է Ճ-ում արտադրվող սինթետիկ մանրաթելից և ներմուծվող բամբակից ու բրդից պատրաստվող գործվածքներ: Ճ. շարունակում

**Արդյունաբերական արտադրանքի արտադրությունը**

| | 1960 | 1970 | 1979 |
|---|---|---|---|
| Էլեկտրաէներգիա, մլրդ *կվտ·ժ* | 98 | 283 | 458* |
| Ածուխ, մլն *տ* | 51 | 40 | 17,6 |
| Բնական գազ, մլրդ *մ*$^{3}$ | — | 2,4 | 2,4 |
| Թուջ, մլն *տ* | 12 | 67 | 83,8 |
| Պողպատ, մլն *տ* | 22 | 93 | 111,7 |
| Գլոցվածք, մլն *տ* | 16 | 68 | 89,1 |
| Պղինձ (ռաֆինացված), հզ. *տ* | 248 | 705 | 984 |
| Ալյումին (սկզբնային), հզ. *տ* | 131 | 728 | 1010 |
| Մետաղահատ հաստոցներ, հզ. հատ | 80 | 257 | 164 |
| Առանցքակալներ, մլն հատ | — | 988 | — |
| Ռադիոընդունիչներ, մլն հատ | 13 | 33 | 13,9 |
| Հեռուստացույցներ, մլն հատ | 3,6 | 12,5 | 13,6 |
| Մագնիտոֆոններ, մլն հատ | 0,5 | 24,6 | — |
| Մարդատար ավտոմոբիլներ, հզ. հատ | 165 | 3178 | 6200 |
| Բեռնատար ավտոմոբիլներ, հզ. հատ | 309 | 2064 | 3400 |
| Նավեր (կառուցումն ավարտված), մլն բրուտտո ռեգիստրային *տ* | 1,8 | 9,9 | 5,2* |
| Լուսանկարչական ապարատներ, մլն հատ | 1,5 | 5,8 | 10,2 |
| Ժամացույցներ, մլն հատ | 13,8 | 49,7 | 95,6* |
| Ծծմբական թթու, մլն *տ* | 4,4 | 6,9 | 6,581 |
| Ամոնիումի սուլֆատ, մլն *տ* | 2,4 | 2,4 | 1,881 |
| Պոլիէթիլեն, հզ. *տ* | 41 | 1305 | 3168 |
| Պոլիվինիլքլորիդ, հզ. *տ* | 258 | 1161 | 1592 |
| Սինթետիկ կաուչուկ, հզ. *տ* | 19 | 698 | 1107 |
| Թուղթ, մլն *տ* | 2,9 | 7,1 | 17,9 |
| Ցեմենտ, մլն *տ* | 22,5 | 57,2 | 87,8 |
| Բամբակե գործվածքներ, մլն *մ*$^{2}$ | 3222 | 2616 | 2339 |
| Արհեստական մետաքսի գործվածքներ, մլն *մ*$^{2}$ | 771 | 354 | — |
| Շտապելային գործվածքներ, մլն *մ*$^{2}$ | 1057 | 827 | 3572 |
| Սինթետիկ գործվածքներ, մլն *մ*$^{2}$ | 434 | 2746 | — |

* 1978

է պահպանել բնական մետաքսից գործվածքներ արտադրող երկրների մեջ գրաված 1-ին տեղը: Տեքստիլ արտադրանքի զգալի մասն արտահանվում է:

Սննդի արդյունաբերությունը ներկայացված է ավանդական [բրնձի և ձկան մշակում, սակեի (բրնձօղի), ձեթի պատրաստում, թեյի արդյունաբերություն] և համեմատաբար նոր (շաքարի, ծխախոտի, ալրաղացային, մսեղենի-կաթնեղենի, պահածոների, գարեջրագործական ևն) ճյուղերով:

**Գյուղատնտեսությունը**: 1970-ական թթ. կեսերին մշակվող տարածությունը հաշվվում էր մոտ 5,7 մլն *հա*, ցանքատարածությունը՝ ավելի քան 6 մլն *հա* (մի շարք շրջաններում՝ 2 ցանքի հաշվին): Մշակվող տարածության 45—46%-ը զբաղեցնում են բրնձի ցանքերը (գրեթե ամբողջությամբ՝ ջրովի), 27,2%-ը՝ բանջարանոցային կուլտուրաները: Մշակում են նաև սոյա, լոբի, թեյ, ծխախոտ, աճեցնում՝ ցիտրուսներ, խնձոր, տանձ, սալոր, դեղձ, խուրմա, ելակ ևն: 1970-ական թթ. կեսերին երկիրն ապահովվում էր սեփական արտադրության բրնձով, բանջարեղենով և մրգերով:

Անասնապահությունը հիմնականում զարգացած է Հոկայդո կղզում: 1979-ին երկրում կար 4120 հզ. գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 9491 հզ. խոզ, 315 մլն թռչուն: 1977-ին արտադրվել է 1438 հզ. *տ* միս, 851 հզ. *տ* թռչնամիս, 5534 հզ. *տ* կաթ: Ավանդական ճյուղ է շերամապահությունը: 1977-ին արտադրվել է 20,6 հզ. *տ* մետաքսի հումք:

Ճ-ի անտառային ֆոնդը կազմում է 23,3 մլն *հա* (այդ թվում 1/2-ը արհեստականորեն վերականգնված անտառներ են), որի զգալի մասը գտնվում է լեռնային շրջաններում և հարմար չէ շահագործման համար: Ձկնորսության չափերով Ճ. աշխարհում գրավում է 1-ին տեղը: 1978-ին ձկան որսը և ծովամթերքների արդյունահանումը կազմել է 10,8 մլն *տ*: Անտարկտիկայի ջրերում զբաղվում են կետորսությամբ:

**Տրանսպորտը**: Ճ. ունի 27 հզ. *կմ* երկաթուղի (1979), որից 16 հզ. *կմ* էլեկտրիֆիկացված է: Սիմոնոսեկիի նեղուցով անցնող ստորջրյա 2 թունելով երկաթուղային կապ կա Հոնսյու և Կյուսյու կղզիների միջև: Կառուցվում է Սեյկանը (1978)՝ աշխարհում ամենամեծ ստորջրյա թունելը (36,4 *կմ*) Ցուգարու նեղուցում՝ Հոնսյու և Հոկայդո կղզիների միջև: Նոր գծեր են կառուցվել գերարագընթաց (ավելի քան 200 *կմ/ժ*) գնացքների համար. Տոկայդո գիծը (515 *կմ*) Տոկիոյի և Օսակայի միջև, ապա նրա շարունակությունը մինչև Ֆուկուոկա (1090 *կմ*) ևն: Կոշտ ծածկույթով ավտոճանապարհների երկարությունը շուրջ 240 հզ. *կմ* է (1979): 1980-ին ավտոպարկում կար 22,8 մլն մարդատար, 12,7 մլն բեռնատար մեքենա, 0,2 մլն ավտոբուս: Տոկիո, Յոկոհամա, Օսակա, Կոբե, Նագոյա, Սապպորո քաղաքներն ունեն մետրոպոլիտեն: Ծովային առևտրական նավատորմի տոննաժը 1979-ին կազմել է 41,0 մլն բրուտտո ռեգիստրային *տ* (համաշխարհայինի 12%-ը, կապիտալիստական աշխարհում 2-րդ տեղը Լիբերիայից հետո): Միջազգային օդային ուղերթերին սպասարկում են Տոկիոյի Նարիտա, ինչպես նաև Օսակա ու Նիիգատա քաղաքների օդանավակայանները:

**Արտաքին առևտուրը**: Արտաքին շուկայում է իրացվում Ճ-ի մշակող արդյունաբերության արտադրանքի 1/3-ից ավելին՝ նավեր, հեռուստացույցներ, լուսանկարչական ապարատներ և կինոխցիկներ, ժամացույցներ, մարդատար ավտոմոբիլներ, պողպատե խողովակներ, տեքստիլ արտադրանք ևն: Միաժամանակ Ճ. ներմուծում է մեծ քանակությամբ վառելիք և հումք, որոնք կազմում են ներմուծման շուրջ 70%-ը: Արտահանումը 1979-ին կազմել է 103078 մլն դոլլար, ներմուծումը՝ 110972 մլն դոլլար: Առևտրական հիմնական գործընկերներն են ԱՄՆ-ը, Հարավ-Արևելյան Ասիայի, Արևմտյան Եվրոպայի, Մերձավոր և Միջին Արևելքի երկրները, Ավստրալիան: ՍՍՀՄ-ի ընդհանուր ապրանքաշրջանառությունը Ճ-ի հետ 1978-ին կազմել է 2319 մլն ռ. (արտահանումը՝ 736, ներմուծումը՝ 1583 մլն ռ.): ՍՍՀՄ-ից Ճ. ստանում է անտառանյութ, երկաթի հանքաքար, քարածուխ, նավթ, նավթամթերքներ, բամբակ, արտահանում՝ բազմատեսակ արդ. սարքավորում, տրանսպորտային միջոցներ, սև մետաղների գլոցվածք և խողովակներ, սպառողական ապրանքներ, քիմ. և տեքստիլ կիսաֆաբրիկատներ ևն:

*Դրամական միավորը* ճապոնական իենն է: ՍՍՀՄ Պետբանկի կուրսով 1000 ճապոնական իենը = 3 ռ. 20 կոպ. (1981, հոկտեմբեր):

**Գյուղատնտեսական հիմնական կուլտուրաների ցանքատարածությունները և բերքը**

| | Տարածությունը, հզ. *հա* | | | Բերքը, հզ. *տ* | | |
|---|---|---|---|---|---|---|
| | 1955 | 1970 | 1977 | 1955 | 1970 | 1978 |
| Բրինձ | 3222 | 2923 | 2757 | 12,9* | 12,7* | 16,3* |
| Ցորեն | 663 | 229 | 86 | 1468 | 474 | 367 |
| Գարի | 433 | 170 | 78 | 2408 | 573 | 215 |
| Բատատ | 376 | 151 | 139 | 7180 | 2564 | 1371 |
| Կարտոֆիլ | 211 | 129 | 83 | 1869 | 3611 | 3600 |
| Սոյայի հունդ | 392 | 95 | 83 | 507 | 126 | 111 |
| Շաքարի ճակնդեղ | 16,8 | 54,1 | — | — | 2332 | 2850** |
| Շաքարեղեգ | 2,4 | 12,3 | — | — | 681 | 1800** |
| Թեյ (տերև) | 39 | 52 | — | 73 | 91 | 108 |

* Մլն *տ*

** 1977

## ՃԱՊՈՆԻԱ, ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆ




ՄԱՍՇՏԱԲ 1:9 000 000

**VIII. Զինված ուժերը**

Ճ-ի զինված ուժերը (այսպես կոչված, ինքնապաշտպանության ուժերը) կազմված են ցամաքային զորքերից, ռազմաօդային և ռազմածովային ուժերից: Գերագույն գլխավոր հրամանատարը պրեմիեր մինիստրն է. անմիջական ղեկավարությունն իրականացնում են Պաշտպանության վարչությունը՝ շտաբների պետերի միացյալ կոմիտեի միջոցով և բոլոր զորատեսակների շտաբները: Զինված ուժերը (մոտ 267 հզ. մարդ, 1977) համալրվում են վարձկաններով: Ցամաքային զորքերը (մոտ 180 հզ. մարդ) ունեն բանակային 5 շտաբ, տանկային 1, հետևակային 12 դիվիզիա, օդադեսանտային 1 բրիգադ, հատուկ զորքերի հրետանային, ինժեներական և մի քանի այլ առանձին միավորումներ, զենիթային կառավարվող ռեակտիվ արկերի 7 խումբ: Ռազմաօդային ուժերը (մոտ 45 հզ. մարդ) ունեն 450 մարտական ինքնաթիռ, 17 էսկադրիլիա, զենիթային կառավարվող ռեակտիվ արկերի 5 դիվիզիոն, ռազմածովային ուժեր (մոտ 42 հզ. մարդ)՝ 16 սուզանավ, 30 ականակիր, շուրջ 200 մարտական ինքնաթիռ են:

**IX. Բժշկա-աշխարհագրական բնութագիրը**

1976-ին Ճ-ում ծնունդը կազմել է 1000 բնակչին՝ 16,4, մահացությունը՝ 6,4, մանկական մահացությունը 1000 ողջ ծնվածին՝ 9,3: Տղամարդկանց կյանքի միջին տևողությունը 72 տարի է, կանանցը՝ 77: Մահացության հիմնական պատճառներն են սիրտ-անոթային, շնչառական օրգանների հիվանդությունները, չարորակ նորագոյացությունները: Տարածված են տրախոման, դիզենտերիան, վեներական հիվանդությունները, տուբերկուլոզը, աճում է հոգեկան հիվանդությունների թիվը: Սոցիալական պրոբլեմ են թմրամոլությունը և ալկոհոլամոլությունը:

Առողջապահության կազմակերպման համակարգում զուգակցված են մասնավոր կապիտալիստական և ապահովագրական բժշկության տարրերը: Արտահիվանդանոցային օգնությունը գրեթե ամբողջությամբ տնօրինում են մասնավոր պրակտիկայով զբաղվող բժիշկները: Բնակչության չնչին տոկոսն է օգտվում ձրի բուժման իրավունքից: Գործող օրենսդրությամբ ծերության թոշակ է նախատեսված 60 տարեկան տղամարդկանց և 55 տարեկան կանանց համար: Առողջապահության պետ. մարմինը առողջապահության և սոցիալական ապահովության մինիստրությունն է:

1975-ին գործել են 8,3 հզ. հիվանդանոց՝ 1 մլն 163,7 հզ. մահճակալով (1000 բնակչին՝ ավելի քան 10 մահճակալ), որից պետ. (1973)՝ 2,5 հզ. հիվանդանոց՝ 377,2 մահճակալով: 1973-ին եղել է ավելի քան 30 հզ. առողջապահական կետ՝ 258, 9 հզ. մահճակալով (947-ը 9,2 հզ. մահճակալով՝ պետ.), 1974-ին աշխատել են 126,8 հզ. բժիշկ (860 բնակչին՝ 1 բժիշկ), 40,6 հզ. ստոմատոլոգ, 74,4 հզ. դեղագործ, 26,8 հզ. մանկաբարձ, 347 հզ. միջին և կրտսեր բուժաշխատող: Բժշկ. կադրեր են պատրաստում բժշկ. 68, ստոմատոլոգներ՝ 15, մանկաբարձներ՝ 37 դպրոց, դեղագործներ՝ 34 ուս. հաստատություն: 1973-ին գործել են առողջապահության և սոցիալական ապահովության մինիստրությանը ենթակա 9 ԳՀԻ: Հայտնի են Կիմակուրա, Տիգասակի, Օհսո կլիմայական, Նիկկո, Կարուիձավա, Հուցիմի լեռնակլիմայական, Ատամի, Նասու, Ցումոտո բալնեոլոգիական առողջարանները: 1973-ին առողջապահության ծախսերը կազմել են պետ. բյուջեի 1,8%-ը:

**X. Լուսավորությունը**

Ճ-ում առաջին դպրոցները հիմնվել են VI դ., բուդդայական մենաստաններին կից: VIII դ. սկզբին ժող. կրթության մասին ընդունված առաջին օրենքով ստեղծվել են պետ. դպրոցներ, ուր բարձր խավի պատանիներն ուսումնասիրում էին չինական դասական գրականությունը, փիլիսոփայություն, օրենքներ, պատմություն, մաթեմատիկա: Ֆեոդալական մասնատվածության ուժեղացմանը զուգընթաց այդ դպրոցները փոխարինվել են խոշոր ֆեոդալների արքունիքներում ստեղծված տոհմական դպրոցներով, ուր պատանիներն ստանում էին ասպետական դաստիարակություն, ուսումնասիրում զինվորական գործը, դասական գրականությունը, մաթեմատիկա և սովորում վարվելակերպի կանոնները: XVII դ. առևտրի ու արհեստների զարգացման հետ դպրոցներ են բացվել վաճառականների, արհեստավորների և աղքատ սամուրայների երեխաների համար, որտեղ սովորեցնում էին գրաճանաչություն, հաշվել, ձեռքի աշխատանք: 1870-ական թթ. ստեղծվել է կրթական կենտրոնացված համակարգ, մտցվել պարտադիր տարրական ուսուցում, բացվել են պետ. դպրոցներ: 1890-ին հրապարակվել է «Դաստիարակության և կրթության մասին կայսերական հրովարտակը» («Կյոիկու տյոկուգո»), որի համաձայն դպրոցներում դաստիարակությունը տարվում էր միլիտարիզմի և ազգայնամոլության ոգով: 1947-ին ընդունվել է «Կրթության մասին հիմնական օրենքը», որով սահմանվել է կրթության հավասար իրավունք, 9-ամյա համընդհանուր, ձրի, պարտադիր կրթություն, տղաների և աղջիկների համատեղ ուսուցում: Բայց այդ սկզբունքները լրիվ չեն կենսագործվում: Ժող. կրթության համակարգը ղեկավարում են լուսավորության մինիստրությունը և տեղական կոմիտեները:

Նախադպրոցական դաստիարակությունը (3—6 տարեկանների) իրականացվում է մանկապարտեզներում: 1975-ին Ճ. ուներ 13,1 հզ. մանկապարտեզ: Պարտադիր կրթության I աստիճանը 6-ամյա տարրական (6—12 տարեկանների), II աստիճանը՝ 3-ամյա ցածր միջնակարգ (13—15 տարեկանների) դպրոցներն են: Բարձր միջնակարգ դպրոցը (ուսուցումը՝ վճարովի) 3-ամյա է (16—18 տարեկանների): Գործում են երեկոյան բարձր միջնակարգ դպրոցներ (4-ամյա): Բարձրագույն կրթության (բարձր միջնակարգ դպրոցի հիմքի վրա) համակարգը կազմում են համալսարանները (4-ամյա, բժշկ. ֆակուլտետները՝ 6-ամյա, 77%-ը՝ մասնավոր), ցածր և տեխ. կոլեջները: 1975-ին Ճ-ում կար 420 համալսարան: Խոշորագույն պետ. համալսարաններից են՝ *Տոկիոյի համալսարանը*, Տոհոկու (հիմնադրվել է 1907-ին, ք. Սենդայ), Կիոտոյի (1897), մասնավորներից՝ Նիհոն (1903), Վասեդա (1882), Մեյձի (1881), Հոսեյ (1880), Տոկայ (1942), բոլորն էլ՝ Տոկիոյում: Կան նաև փոքր (մեկ-երկու ֆակուլտետով) համալսարաններ: Ցածր կոլեջները (85%-ը՝ մասնավոր) պատրաստում են տեխ. կամ մանկավարժական միջնակարգ կրթությամբ մասնագետներ: Տեխ. կոլեջները (5-ամյա, հիմնականում՝ պետ.) ստեղծվում են ցածր միջնակարգ դպրոցի հիմքի վրա: 1975-ին Ճ-ում կար 895 հանրային գրադարան: Խոշորագույնը Ազգային պառլամենտականն է (հիմնադրվել է 1948-ին, ավելի քան 6,5 մլն գիրք), խոշորներից են Տոկիոյի (1887, ավելի քան 4 մլն գիրք) և Կիոտոյի (1899, 3,4 մլն գիրք) համալսարաններինը:

Ճ. ունի (1975) 409 թանգարան, այդ թվում՝ Ազգային (1871), Օկուրա Սյուկոկան (1917), Ազգային գիտական (1877), Ժամանակակից արվեստի ազգային (1952), բոլորն էլ՝ Տոկիոյում, Ազգային (1889), Ժամանակակից արվեստի պատկերասրահ (1963), երկուսն էլ՝ Կիոտոյում են:

**XI. Գիտությունը և գիտական հիմնարկները**

**1. Բնական և տեխնիկական գիտությունները**

Հին դարերում և վաղ միջնադարում բնագիտական գիտելիքներ կուտակվել են գլխավորապես այն բնագավառներում, որոնք կապված են եղել գյուղատնտեսության, բժշկության, արհեստների (ապակեգործություն, խեցեգործություն, մետաքսագործություն ևն) հետ: Դրանց զարգացման վրա էական ազդեցություն է գործել Չինաստանի և Կորեայի մշակույթը: VII դ. 2-րդ կեսին հայտնաբերվել են նավթի, ծարիրի, անագի հանքավայրեր. սկիզբ է դրվել մետալուրգիային, թղթի արտադրությանը: 675-ին Ասուկայում կառուցվել է աստղադիտարան: Մոտ 840-ին Ճ. է թափանցել գրատպությունը (փայտագրություն): X դ. սկզբին Ս. Ֆուկանե տվել է Ճ-ի կենդանական և բուսական աշխարհի նկարագրությունը: XVII—XVIII դդ. ձևավորվել են ազգային ինքնատիպ գիտական դպրոցներ: Մաթեմատիկայի բնագավառում հայտնի էին Կովա Սեկիի և նրա աշակերտների աշխատանքները: 1744-ին Էդոյում կառուցվել է աստղադիտարան: Աստղագիտության և բարձրագույն գեոդեզիայի հարցերով զբաղվել են Գորյու Ասադան, Մ. Մոտոկին, Տադաո Սիձուկին: Ռինսո Աոտին գրել է «Ֆիզիկայի ընդհանուր դասընթացը» (1825), իսկ քիմիայի վերաբերյալ առաջին ինքնուրույն աշխատությունը ստեղծել է Ցոան Ուդագավան: Կենսաբանական գիտելիքների զարգացմանը նպաստել են Ցակուսաի Ինոյի, Ռանձան Օնոյի հետազոտությունները: XIX դ. սկսած պետությունը վարել է գիտական գործունեությունը խթանելու քաղաքականություն: Հիմնադրվել են եվրոպական տիպի պետ. (Սապպորոյում՝ 1876-ին, Տոկիոյում՝ 1877-ին ևն) և մասնավոր համալսարաններ և ավելի քան 70 գիտական հիմնարկներ ու նույնքան գիտական ընկերություններ: Սեյս-

մոլոգիայի և հրաբխագիտության ճապոնական դպրոցի կազմավորման գործում մեծ դեր է կատարել Ֆուսակիտի Օմորին: Համաշխարհային ճանաչում են ստացել Սիբասաբուրո Կիտազատոյի աշխատանքները միկրոկենսաբանության բնագավառում: XX դ. 1-ին կեսին բացվել են նոր համալսարաններ, գիտական գործունեության կոորդինացման և միջազգային գիտական կապերի հաստատման նպատակով 1920-ին ստեղծվել է Ճ-ի գիտահետազոտական խորհուրդ: 1932-ին հիմնվել է գիտության խրախուսման ընկերություն: Հիմնարար հետազոտություններ են կատարվել գիտության բոլոր բնագավառներում: Ֆիզիկայի զարգացման գործում զգալի ավանդ է ներդրել Յոսիո Նիսինան, որ Ճ-ում առաջինն է հետազոտել տիեզերական ճառագայթները, 30-ական թթ. ստացել $^{237}$U իզոտոպը, ձեռնամուխ եղել ցիկլոտրոնի կառուցմանը: Նրա աշակերտ Հիդեկի Յուկավան (1966-ից ՍՍՀՄ ԳԱ արտասահմանյան անդամ) մշակել է մեզոնային տեսության հիմնական հասկացությունները (նոբելյան մրցանակ, 1949): Մագնիսականության պրոբլեմներին վերաբերող հետազոտություններ են կատարել Հանտարո Նագաոկան (1930-ից ՍՍՀՄ ԳԱ արտասահմանյան պատվավոր անդամ) և Սեյձի Կայան (1958-ից ՍՍՀՄ ԳԱ արտասահմանյան անդամ): Իրենց աշխատանքներով լայն ճանաչման են արժանացել կենսաքիմիկոս Սիրո Ակաբորին (1966-ից ՍՍՀՄ ԳԱ արտասահմանյան անդամ), քիմիկոսներ Տոսինոբու Ասահին, Ս. Ակաբանեն, Զյոձի Սակուրաին (1927-ից ՍՍՀՄ ԳԱ արտասահմանյան պատվավոր անդամ): Կենսաբանության, բժշկության բնագավառում գիտական և գործնական լուրջ նշանակություն ունեցող հետազոտություններ են կատարել Զյոկիտի Տակամինեն (բյուրեղային ադրենալինի անջատում), Ումետարո Սուձուկին (վիտամինագիտություն), Կացուսաբուրո Յամագիվան և Կյոիտի Իտիկավան (քաղցկեղային ուռուցքների փորձնական մակածում), Հիդեյո Նոգուտին և Յոնեձի Միյագավան (վեներոլոգիա), Հիտոսի Կիհարան (բույսերի գենետիկա և ֆիզիոլոգիա) և ուրիշներ: Երկրաբանա-աշխարհագրական գիտությունների զարգացումը Ճ-ում կապված է Նաոկատա Յամաձակիի գործունեության հետ («Ճապոնիայի ռեգիոնալ աշխարհագրություն», հհ. 1—10, 1904—15): Ռեգիոնալ երկրաբանության ասպարեզում կարևոր աշխատանքներ են կատարել Բ. Կոբոն և Տեյիտի Կոբայասին: Օվկիանոսագիտության զարգացման գործում զգալի ավանդ է ներդրել Կանձի Սուդան: Սեյսմոլոգիական կանոնավոր հետազոտությունների հիմքն է դրել Ակիցունե Իմամուրան: Կիրառական բնույթի հետազոտություններով զբաղվել են մասնավոր ընկերությունների հետազոտական և նախագծային բաժանմունքները և համալսարաններին պատկանող մի շարք ԳՀԻ-ներ (ավիացիոն, ռազմածովային տեխնոլոգիայի, մետալուրգիայի ևն): Համաշխարհային ճանաչում են ստացել Տոկուսիտի Միսիմայի՝ մագնիսական պողպատներին և համաձուլվածքներին վերաբերող աշխատանքները: 1928-ին Կենձո Տակայանագին պատրաստել է փորձնական հեռուստացույց:

1945-ից հետո գիտական գործունեությունն էապես վերակառուցվել է: Գիտական աշխատանքների կոորդինացման նպատակով 1949-ին ստեղծվել է Ճ-ի գիտական խորհուրդ, 1956-ին՝ գիտատեխնիկական վարչություն, 1959-ին՝ գիտության և տեխնիկայի խորհուրդ պրեմիեր մինիստրին կից: Իրենց գործունեությունն են շարունակել Նիսինան և Յուկավան: Դաշտի քվանտային տեսության բնագավառում կատարած աշխատանքների համար Սինյիտիրո Տոմոնագան (1971-ից ՍՍՀՄ ԳԱ արտասահմանյան անդամ) 1965-ին արժանացել է նոբելյան մրցանակի: Ազգային գիտության զարգացման գործում ծանրակշիռ ավանդ ունեն Ռյոգո Կուբոն (մոլեկուլային ֆիզիկա) և Կաձուհիկո Նիշիջիման (թույլ փոխազդեցությունների տեսություն): Կիսահաղորդչային էլեկտրոնիկայի ասպարեզում հայտնի են Լեո Էսակիի հետազոտությունները (առաջարկել է թունելային դիոդը, նոբելյան մրցանակ, 1973): Մաթեմատիկայի զարգացումը կապված է Կունիհիկո Կոդայրայի (հանրահաշվական երկրաչափություն), Տոսիո Կատոյի և Միկիո Սատոյի (ֆունկցիոնալ անալիզ), Կիյոսի Օկայի (ֆունկցիաների տեսություն), Մ. Նոգատայի (ինվարիանտության տեսություն) գործունեության հետ: Համակողմանի զարգացում են ապրել բնագիտության մյուս ճյուղերը՝ կառուցվածքային քիմիան (Մասաո Կատայամա, Յոնեձո Մորինո), ռադիոքիմիան (Մ. Կոնդո, Կացումի Կիմուրա և ուրիշներ), բույսերի կենսաքիմիան (Մասաձի Տոմիտա), կենսաբանությունը, հատկապես գենետիկան (Հ. Յոսիկավա, Ռ. Օկաձակի, Մ. Կիմուրա, Ի. Տակահասի, Դ. Էգամի, Սուսումու Օնո և ուրիշներ), բժշկությունը (Ս. Վատանաբե, Տ. Տոկատու, Ի. Օնո և ուրիշներ), երկրաբանա-աշխարհագրական գիտությունները (Տակեսի Նագատա, Մանձիրո Վատանաբե, Կիյո Վադատի և ուրիշներ), օվկիանոսագիտությունը (Կոձի Հիդակա, Ի. Մացիձավա, Միտիտակա Ուդա և ուրիշներ) ևն: 1950-ական թթ. կեսերից Ճ-ում սկսվել է տիեզերական ծրագրերի մշակումը: 1970-ին արձակվել է Երկրի «Օսումի» արհեստական արբանյակը: 1950-ական թթ. սկսած կապիտալիստական երկրների շարքում Ճ. առաջատար տեղ է գրավում ռադիոէլեկտրոնային սարքավորման, ԷՀՄ-ների, ավտոմատացման միջոցների, ատոմային էներգետիկական տեղակայանքների նոր նմուշների ստեղծման ասպարեզում, նավաշինության, ավտոմոբիլաշինության, ճշգրիտ սարքաշինության, նավթաքիմիայի և այլ բնագավառներում:

**2. Հասարակական գիտությունները**

**Փիլիսոփայությունը**: Ճ-ում փիլիսոփայական մտքի առաջացումը կապված է VI—VIII դդ. Չինաստանից և Կորեայից *կոնֆուցիականության* գաղափարների և բուդդայականության ներթափանցման հետ, որոնք տարածվում էին կրոնադիցաբանական ազգային պատկերացումների կողքին և ստանում ուրույն մեկնաբանություն: XII—XIV դդ. ձևավորվել են ձեն, ձյոդո և նիտիրեն աղանդների ուսմունքները, հանդես են եկել բուդդայական փիլիսոփայության նշանավոր մեկնիչներ Դոգենը, Սինրանը, Նիտիրենը: XIV—XVI դդ. փիլ. մտքի մեջ տիրապետել է բուդդայականությունը, XVII դարից՝ կոնֆուցիականությունը: XVII—XVIII դդ. զարգացել են նաև կոնֆուցիականության դոգմաները ժխտող ուսմունքներ: Մատերիալիստական գաղափարներով հանդես են եկել Սյոեկի Անդոն, Չինսայ Իտոն, XIX դ. 2-րդ կեսին՝ Տյոմին Նակաեն: 1867—1868-ի անավարտ բուրժ. հեղափոխությունից հետո բուդդայական-կոնֆուցիական փիլիսոփայությունը աստիճանաբար կորցրել է իր ազդեցությունը՝ տեղը զիջելով արևմտաեվրոպական բուրժ. փիլ. տարբեր հոսանքների: XIX դ. վերջին — XX դ. սկզբին տարածվել են ֆրանս. լուսավորականության և անգլ. պոզիտիվիզմի գաղափարները, ազդեցություն է ձեռք բերել գերմ. դասական փիլիսոփայությունը: Նույն շրջանում սկսվել է մարքսիզմի ներթափանցումը: XX դ. 20—40-ական թթ. ճապոնական բուրժ. փիլիսոփայության վրա ուժեղ կերպով ներազդել են կանտականությունը, հեգելականությունը, ինչպես նաև պրագմատիզմը, ֆենոմենոլոգիան, էկզիստենցիալիզմը: Ձևավորվել է այսպես կոչված ճապոնական «դասական իդեալիզմը» (Կիոտոյի դպրոց, որը 1940-ական թթ. վերջին փաստորեն անկում է ապրել): Տարածվել են «ճապոնիզմի» հետադիմական գաղափարախոսության փիլ. տարբեր վարկածներ: 1950-ական թթ. առաջատար դիրք են գրավել էկզիստենցիալիզմը և պրագմատիզմը, 1960-ական թթ.՝ անալիտիկ փիլիսոփայությունը և արդի բուրժ. փիլիսոփայության այլ նորագույն հոսանքներ՝ ճապոնական տարբերակներով («ճապոնական պրագմատիզմ», «ճապոնական էկզիստենցիալիզմ» ևն).

XX դ. 20-ական թթ. զգալի տարածում է ստացել մարքսիստական փիլիսոփայությունը: 1930-ական թթ. հետևողականորեն դիալեկտիկական և պատմական մատերիալիզմ է պրոպագանդել «Մատերիալիզմի ուսումնասիրության ընկերությունը»: Մարքսիստական փիլիսոփայության զարգացման մեջ մեծ ներդրում ունեն Զյուն Տոսական և Հիրոսի Նագատան: 1940-ական թթ. 2-րդ կեսից մարքսիստական փիլիսոփայությունը ստացել է ավելի մեծ տարածում: Թարգմանվել են Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի և Վ. Ի. Լենինի հիմնական երկերը: Մարքսիստ փիլիսոփաները մշակում են մարքսիստական փիլիսոփայության պրոբլեմները, քննադատում բուրժ. փիլիսոփայությունը:

Ճ-ում փիլ. ուսումնասիրությունները կատարվում են խոշոր համալսարաններում: Հրատարակվում են փիլ. ամսագրեր:

**Պատմագիտությունը**: Ճապոնական առաջին գրավոր ժամանակագրությունները կազմվել են VIII—IX դդ.: Դրանցից կարևոր են երկուսը՝ «Կոձիկի» («Հին ժամանակների գրառումներ», 712) և «Նիհոն սյոկի» («Ճապոնիայի տարեգրություններ», 720), որոնցում շարադրված է Ճ-ի հին պատմությունը՝ սկսած այսպես կոչված աստվածների դարաշրջանից: Ժամանակագրությունների՝ «աստվածների

դարաշրջանին» վերաբերող բաժինները XVII դ. սկզբից մինչև երկրորդ համաշխարհային պատերազմի (1939—45) ավարտը պաշտոնապես ճանաչվել են իբրև պատմական իրական փաստեր և օգտագործվել ճապոնական ազգի աստվածային ծագման վերաբերյալ ազգայնական հետադեմ տեսությունը հիմնավորելու համար: XVII դ. կեսին ավարտվեց դարասկզբին Ռաձան Հայասիի սկսած «Հոնտյո ցուգան» («Մեր երկրի համապարփակ հայելին») 310-հատորանոց աշխատությունը: XVII դ. վերջին ստեղծվեցին «Հոնգի» («Հիմնական տարեգրություններ») և «Ռիցուդեն» («Կենսագրություններ») գործերը, սկիզբ դրվեց «Դայնիպպոնսի» («Մեծ Ճապոնիայի պատմություն») աշխատությանը (397 հատոր, ավարտվել է մինչև 1906-ը): Պատմագիտության զարգացման մեջ կարևոր ավանդ է ներդրել կոնֆուցիական գիտնական և քաղ. գործիչ Հակուսեկի Արաին (1657—1725), որն իր աշխատություններում [«Տոկուսի յորոն» («Պատմության լրացուցիչ մեկնաբանություններ»), «Կոսիցու» («Հին պատմության ուրվագիծ»)] առաջին անգամ փորձել է տալ Ճ-ի պատմության պարբերացումը, «աստվածների դարաշրջանը» դիտել իբրև մարդկային պատմության արտացոլում: XVIII—XIX դդ. սկսել է զարգանալ ազգային գիտությունը, որի ներկայացուցիչները [Մաբուտի Կամո (1697—1769), Նորինագա Մոտոորի (1730—1801) և ուրիշներ] մերժել են կոնֆուցիականության անառարկելի հեղինակությունը, իդեալականացրել Ճ-ի հին պատմությունը, հիմնավորել ռազմաֆեոդալական բռնապետության փոխարինման անհրաժեշտությունը կայսերական իշխանությամբ:

1867—68-ի անավարտ բուրժ. հեղափոխությունից հետո, բուրժ. վերափոխումների շրջանում, պատմագիտությունը զգալիորեն կրել է եվրոպական պոզիտիվիզմի ու լուսավորականության ազդեցությունը (Ուկիտի Տագուտի, Միցումի Մուրոտա), առաջացել է լիբերալ-բուրժուական ուղղությունը: 1887-ին հիմնվել է Տոկիոյի համալսարանի պատմության ֆակուլտետը, 1889-ին՝ «Սիգակկայ» պատմական առաջին ընկերությունը: 1895-ին սկսել են հրատարակվել «Ճապոնիայի պատմության նյութերը» («Դայնիհոն սիրյո») և «Պատմական հին փաստաթղթերի ժողովածու» («Դայնիհոն կոմոնձյո»): XIX դ. վերջից պատմագիտության մեջ տիրապետող դիրք են գրավել ճապոնակենտրոն ազգայնական ըմբռնումները, որոնք անվերապահորեն ընդունում էին կայսերական դինաստիայի աստվածային ծագումը, ճապոնական ազգի ռասայական գերազանցությունը: XX դ. 20-ական թթ. մարքսիզմի տարածման պայմաններում փորձեր են արվել նոր ձևով լուսաբանելու Ճ-ի պատմությունը, մասնավորապես, ցույց տալու ժող. զանգվածների դերը, ուսումնասիրելու «Մեյձի» հեղափոխության սոցիալ-տնտեսական նախադրյալները ևն (Գորո Հանի, Ցոսիտարո Հիրանո և ուրիշներ): Աշխուժացել է լիբերալ բուրժ. ուղղությունը (Ցոսաբուրո Տակեգոսի, Էյձիրո Հոնձյու և ուրիշներ): Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Ճ-ի պատմագիտության մեջ ձևավորվեց առաջադեմ դեմոկրատական ուղղությունը, որի շատ ներկայացուցիչներ ունեն մարքսիստական դիրքորոշում կամ մոտ են նրան (Ձյոկիտի Ուտիդա, Ցոսիկացու Ֆուրուհատա, Սաբուրո Իենագա և ուրիշներ): Կարևոր տեղ է գրավում բուրժուաօբյեկտիվիստական ուղղությունը (Ցոսիտակե Օկա, Տակեսի Իսիդա և ուրիշներ): Միաժամանակ հրատարակվում են այնպիսի աշխատություններ, որոնցում Ճ-ի պատմության (առանձնապես՝ նախապատերազմյան) հարցերը կրկին լուսաբանվում են ազգայնական դիրքերից (Մասասի Նաձու, Սիգենոի Տոկո և ուրիշներ):

Պատմության ուսումնասիրությունը կենտրոնացած է հիմնականում Տոկիոյի համալսարանին կից Հասարակական գիտությունների ինստ-ում, Արևելյան մշակույթի ինստ-ում, Տոկիոյի Վասեդա համալսարանին կից Հասարակական գիտությունների ինստ-ում և այլուր: Հրատարակվում են պատմագիտական հանդեսներ:

**Տնտեսագիտությունը**: Ձևավորվել է XIX դ. 2-րդ կեսին, երկրում կապիտալիզմի հաստատման շրջանում: Սկզբում տիրապետող էր ուշ *մերկանտիլիզմը* (Սյոնան Եկոի, Կիմիմասա Ցուրի), կարևորվում էր պետության կողմից մանուֆակտուրաների ու առևտրի հովանավորումը: Շահույթը համարվում էր արտաքին շուկայում անհամարժեք փոխանակության արդյունք, իսկ նյութական արտադրության զարգացումը՝ առևտրական հաշվեկշռի ակտիվացման ուղի: Այդ շրջանում տնտեսագիտական մտքի վրա մերկանտիլիզմի ազդեցության թուլացման գործում մեծ էր Ուկիտի Տագուտիի, Ցուկիտի Ֆուկուձավայի, Մասանա Մաեդայի ներդրումը: Նրանք հարստությունն արդեն չէին նույնացնում միայն դրամի հետ, էկոնոմիկայի զարգացման վճռորոշ պայման էին համարում գյուղատնտեսության, արդյունաբերության, առևտրի վերելքը, արտադրողական ուժերի կատարելագործումը, իսկ ոսկու և շրջանառության վարկային լծակների լայն կիրառումն ընդունում էին իբրև անհրաժեշտություն: 1870-ական թթ. վերջին տնտեսագետներն ուսումնասիրում էին կապիտալիստական արտադրության շարժիչ ուժերը (Տամեյուկի Ամանո, Ինեձիրո Տաձիրի, Սանաե Տակադա և ուրիշներ), իսկ 1880-ական թթ.՝ սոցիալ-տնտեսական պրոցեսների և վերնաշենքային երևույթների կոնկրետ առանձնահատկությունները (Հիրոյուկի Կատո, Սյուձո Ցաձիրո Սինագավա): XX դ. սկզբին գաղափարական պայքարի կենտրոնում ընդհանուր մեթոդաբանական և աշխարհայացքային պրոբլեմներն էին: Մարքսիստներ Սեն Կատայաման, Իսաո Աբեն, Տոսիհիկո Սակային պաշտպանում էին հասարակական զարգացման դիալեկտիկականմատերիալիստական ըմբռնումը, իսկ բուրժ. ռեֆորմիստները (Տոկուձո Ֆուկուդա և ուրիշներ) և Կ. Մարքսին Հ. Սպենսերի հետ «հաշտեցնող» Հաձիմե Կավակամին հասարակական, այդ թվում տնտ. երևույթները գնահատում էին իդեալիստական ու մետաֆիզիկական դիրքերից: Ֆուկուդան կապիտալիստական արտադրության հիմնական շարժառիթ էր համարում իբր մարդուն հատուկ եսասիրությունն ու շահամոլությունը, իսկ Կավակամին կողմ էր արտադրողների ու սպառողների հոգեբանական հակազդեցությունը որպես տնտ. վերլուծության ինքնուրույն ոլորտ առանձնացնելուն: 1929—1933-ի համաշխարհային ճգնաժամի պայմաններում բուրժ. տնտեսագետները էկոնոմիկայի կարգավորման ուղի էին համարում վերադարձը ոսկյա դրամի ստանդարտին, վալյուտային կուրսի և ինենի անվանական արժեքի մակարդակների հավասարեցումը (Ձյուննոսուկե Ինսուե) կամ, ընդհակառակը, ինենի վալյուտային կուրսի իջեցումը և ոսկու օգտագործումը միայն արտաքին տնտ. հաշվարկների ոլորտում (Կամեկիտի Տակահասի, Ցասուձումի Ցամաձակի): 1930-ական թթ. բուրժ. տնտեսագիտության մեջ տարածված էին սահմանային օգտակարության տեսությունը (տես *Ավստրիական դպրոց*), այնուհետև՝ *քեյնսականությունը* (Նիսաբուրո Կիտո, Կեյ Սիբատա), որոնք մեկնաբանվում էին մաթ. տարբեր սխեմաների ու մոդելների կիրառման միջոցով (Իտիրո Նակայամա, Ցասումա Տակադա): 1950-ական թթ. տընտեսագիտության զարգացումն ընթանում էր արդ. արտադրության աճի տեմպերի բարձրացման, տեխնոլոգիայի կատարելագործման, արտաքին տնտ. էքսպանսիայի ու դրա ձևերի փոփոխման պրոբլեմների մշակման, ինչպես նաև ներքեյնսականության տեսական որոշ դրույթների քննարկման ուղղությամբ (Օսամու Սիմոմուրա, Հիսաո Կանամորի):

1950—60-ական թթ. տարածված էին քաղաքատնտեսության նոր դասական ուղղությունը (Կենյիտի Ինադա, Ցոիտի Սինկայ, Հիրոբումի Ուձավա) և *ինստիտուցիոնալիզմը* (Սիգետո Ցուրու): Այս շրջանում պետական-մոնոպոլիստական կարգավորման հակասությունները, բուրժ. պետության տնտ. և սոցիալական քաղաքականության դասակարգային բնույթը բացահայտվում էր միայն մարքսիստ տընտեսագետների (Ցոսիհիկո Օնո, Ցուտոմու Օուտի, Ֆումիո Մորիա և ուրիշներ) աշխատություններում: 1970-ական թթ. տնտեսագիտական ուսումնասիրությունների կենտրոնում տնտ. զարգացման համար աննպաստ պայմաններին հարմարվելու, արտադրողական ուժերի տեղաբաշխման անհամամասնությունները վերացնելու, շրջապատող միջավայրը պահպանելու, տնտ. մրցակցության, հակացիկլային քաղաքականության և այլ պրոբլեմներն են: Տնտ. զարգացման պետ. պլանների ձախողումը տնտեսագետներին ստիպում է կատարելագործել էկոնոմիկայի կարգավորման, ծրագրավորման և կանխատեսման մոդելները: Սկսել է զարգանալ քաղաքատնտեսության «ձախ արմատական» ուղղությունը:

Տնտ. հետազոտությունների կենտրոններն են՝ համալսարանները, արտաքին առևտրի ու արդյունաբերության մինիստրությունը, նաև տնտ. պլանավորման վարչությանն առընթեր ինստ-ները, տնտ. հետազոտությունների ճապոնական կենտրոնը, Նոմուրայի, Միցուբիսիի և այլ ինստ-ներ, տնտեսագիտական ընկերու-

թյունների ճապոնական միությունը: Հրատարակվում են տնտեսագիտական հանդեսներ:

**Իրավագիտությունը**: Ձևավորվել է XIX դ. կեսին: Մինչ այդ իրավունքը ուսումնասիրվել է կոնֆուցիականության շրջանակներում: Կապիտալիզմի զարգացման պահանջների ազդեցությամբ Ճ-ի իրավական համակարգը արմատապես փոխվեց հիմնականում բուրժ. երկրների իրավունքը փոխառելու միջոցով: Բուրժ. իրավագիտության զարգացման ձգձգվելու և արտաքին գործոնների ազդեցության հետևանքով Ճ-ում առաջացան բազմաթիվ, հիմնականում՝ էկլեկտիկական դպրոցներ ու ուղղություններ: XIX դ. 70-ական թթ. վերջից տարածվում են բնական իրավունքի ֆրանս. ըմբռնումները, որոնք դարձան «հանուն ազատության և ժողովրդի իրավունքների» դեմոկրատական շարժման գաղափարական հիմքը: XIX—XX դդ. սահմանագծին ուժեղանում է պոզիտիվիզմի ազդեցությունը: Սակայն Ճ-ի իրավագիտության մեջ գերակշռում էր գերմ. քաղ. ուսմունքների ազդեցությունը, որոնք սահմանադրական միապետությունը դիտում էին որպես կառավարման լավագույն ձև: Այդ ազդեցության հետևանքով Ճ-ում մշակվում է պետ. կառուցվածքի մասին իռացիոնալիստական-նացիոնալիստական տեսությունը, որը ծառայում էր բյուրոկրատական իրավական պետության հիմնավորմանը: XX դ. 30-ական թթ. Ճ-ում տիրապետող են դառնում իրավագիտության ֆաշիստական ըմբռնումները: Ետպատերազմյան տարիներին աճել է մարքսիստական ուղղության դերը (Ցոսիտարո Հիրանո, Ցասուձի Կաձահայա, Ցասուո Տանակա, Ցասուձո Սաձուկի): Ուսումնասիրվում են սոցիալիստական երկրների իրավունքն ու իրավագիտությունը (Մասայասու Հասեգավա, Ցոձո Վատանաբե, Ինեձիրո Նումատա, Իսամու Ֆուձիտա): Տարածվում է նաև իրավունքի սոցիոլոգիական ուղղությունը: Տեսական իրավական միտքը (Տոմոո Օտակա և նրա աշակերտները՝ Ինոուե, Ցաձակի, Աոմի) ընդհանուր առմամբ հակված է դեպի նեոպոզիտիվիզմը:

1945-ից հետո, ավանդական ճյուղերից (քաղաքացիական իրավունք, առևտրական իրավունք, քրեական իրավունք) բացի, հետազոտվում են նաև վարչական իրավունքի, շրջապատող միջավայրի պահպանման իրավական հարցերի, կրթության, ինֆորմացիայի են պրոբլեմները: Իրավագիտության բնագավառի ուսումնասիրությունները հիմնականում կատարում են համալսարանները և համազգային ճյուղային իրավաբանական ասոցիացիաները: Ճ-ում պարբերաբար հրատարակվում են իրավաբանական ասոցիացիաների տարեգրքեր, համալսարանական ամսագրեր են:

**3. Գիտական հիմնարկները**

Գիտության և տեխնիկայի բնագավառի պետ. քաղաքականությունը մշակում և իրացնում է Գիտատեխնիկական վարչությունը (հիմնադրվել է 1956-ին): Կառավարությանը կից խորհրդակցական մարմին է Ճ-ի գիտական խորհուրդը (1949), որը Ճ-ի գիտությունը ներկայացնում է միջազգային ասպարեզում, մասնակցում գիտական կոնֆերանսների կազմակերպմանը են: Գիտատեխնիկական վարչության և գիտության բնագավառի այլ գերատեսչությունների առաջարկությունները հաստատող հիմնական կոորդինացնող մարմինը պրեմիեր մինիստրին կից գիտության և տեխնիկայի խորհուրդն է (1959): Ճապոնական ակադեմիան (1879) ունի 150 անդամ:

Մոտ 4500 (1975) գիտահետազոտական հիմնարկներից ավելի քան 3100-ը պատկանում են մասնավոր ընկերություններին, 880-ը մասնագիտացված են, 543-ը՝ բուհական: Մասնագիտացված ԳՀԻ-ները պետական են (87), մունիցիպալային (591) և մասնավոր (202): Պետական ԳՀԻ-ները ենթակա են մինիստրություններին և գերատեսչություններին կամ գործում են ինքնուրույն: Խոշորագույններն են՝ Էլեկտրատեխնիկական լաբորատորիան, Ֆիզիկական և քիմիական հետազոտությունների ինստ-ը, Ավիացիոն և տիեզերական տեխնիկայի ազգային լաբորատորիան, Ատոմային էներգիայի ճապոնական ինստ-ը են: Բուհական գիտահետազոտական հիմնարկները ենթաբաժանվում են պետ. (301), մունիցիպալային (35) և մասնավոր (207) հիմնարկների: Խոշորներն են՝ Հիտոցուբասի համալսարանի տընտեսագիտական հետազոտությունների ինստ-ը (1940), Տոկիոյի պետ. համալսարանի պինդ մարմնի ֆիզիկայի (1957) և ավիացիոն ու տիեզերական տեխնիկայի (1958) ինստ-ները, Նիհոն համալսարանի ատոմային էներգիայի ինստ-ը (1957) են: 1975-ին գիտաշխատողների թիվը կազմել է 255 հզ. մարդ:

Արագորեն աճում են գիտահետազոտական աշխատանքներին հատկացվող միջոցները: Հատուկ ուշադրություն է դարձվում հետազոտությունների 5 խոշոր ազգային ծրագրերին՝ շրջապատող միջավայրի պահպանությանը, ինֆորմացիայի մշակման միջոցների զարգացմանը, միջուկային էներգիայի, տիեզերական հետազոտությունների, համաշխարհային օվկիանոսի ուսումնասիրությանը: Ճ. ավելի քան 50 միջազգային գիտական կազմակերպությունների անդամ է, ակտիվորեն մասնակցում է միջազգային գիտահետազոտական բազմաթիվ ծրագրերի մշակմանը: Գիտնականների փոխանակություններ է կատարում ՍՍՀՄ ԳԱ-ի, Մոսկվայի պետական համալսարանի և սովետական այլ գիտական կազմակերպությունների հետ: 1973-ին կնքվել է ճապոնա-սովետական գիտատեխնիկական համագործակցության միջկառավարական պայմանագիր:

**XII. Մամուլը, ռադիոհաղորդումները, հեռուստատեսությունը**

Խոշորագույն օրաթերթերից են. «Ասահի»՝ Տոկիոյում (1888-ից), Օսակայում, Սապպորոյում, Կիտակյուսյուում և Նագոյայում, «Իոմիուրի»՝ Տոկիոյում (1874-ից), Օսակայում, Կիտակյուսյուում, Սապպորոյում և Տակաոկայում, «Մայնիտի»՝ Տոկիոյում (1872-ից), Օսակայում, Սապպորոյում, Կիտակյուսյուում և Նագոյայում: Ճ-ի ԿԿ կենտրոնական օրգանը «Ակահատա» թերթն է (1928-ից, Տոկիո): Շաբաթաթերթերից են՝ «Ձիյու մինսյու» (1955-ից), «Մինսյա սիմբուն», «Սոհյո սիմբուն», «Սյակայ սիմպո» (1959-ից):

Ինֆորմացիոն գործակալություններն են՝ Կիոդո Ցուսին (հիմնադրվել է 1945-ին), Ձիձի Ցուսին (1945): Ռադիոն և հեռուստատեսությունը հիմնականում մասնավոր են: Ռադիոհաղորդումները տրվում են 1925-ից (արտասահմանյան հաղորդումները՝ 21 լեզվով), հեռուստահաղորդումները՝ 1953-ից:

**XIII. Գրականությունը**

Հին շրջանում (մինչև VII դ. կեսերը) Ճ-ում զարգացած են եղել բանավոր ստեղծագործությունը և դիցաբանությունը: I հազարամյակի կեսերին Ճ. սկսեց մտնել մշակութային կապերի չին-բուդդայական ոլորտի մեջ: IV—V դդ. սահմանագծին պաշտոնական փաստաթղթերում և կրոնա-փիլիսոփայական երկերում օգտագործվում էր չին. հիերոգլիֆային գիրը:

Վաղ միջնադարի սկզբնաշրջանին (VII դ. կես —XII դ. վերջ) է վերաբերում ճապոներենով (հիերոգլիֆների օգտագործումով) պահպանված հուշարձաններից առաջինը՝ «Կոձիկի» տարեգրությունը: Պատմողական գրականությունն սկզբնավորվել է IX դ. կեսերին, երբ երևան է եկել «Տակետորի-մոնոգատարի» վիպակը՝ կազմված մի շարք նովելներից: X—XI դդ. ձևավորվել է մ ո ն ո-ն ո ա վ ա ր ե («իրերի թախծալի թովչանքը») գեղագիտական կատեգորիան, որն իր կնիքն է դրել Ճ-ի մշակույթի ու գրականության հետագա ամբողջ զարգացման վրա:

Գրականության մեծ մասը ստեղծում էր արիստոկրատիան: X դ. ծագել է բանաստեղծություններով հագեցած արձակի հատուկ տեսակը (առաջին նմուշը՝ «Իսեմոնոգատարի»), ապա նաև օրագրային-մեմուարային գրականությունը (ն ի կ կ ի): X դ. 2-րդ կեսից գրականության մեջ առանձնացել է այսպես կոչված կանանց հոսանքը (գոյատևել է շուրջ մեկ ու կես դար), որտեղ հատուկ տեղ էին գրավում կին գրողներ Միտիցունա-նո Հահայի (մոտ 935—995), Իձումի Սիկիբուի (974—1036), Մուրասակի Սիկիբուի (մոտ 978—1016) և այլոց օրագրերը: Ճապոնական դասական գրականության գագաթնակետն է համարվում Մուրասակի Սիկիբուի «Գենձի-մոնոգատարի» (X դ. վերջ— XI դ. սկիզբ) վեպը: Զ ու յ հ ի ց ու (էսսե) ժանրով գրված առաջին երկը կին գրող Սեյ Սյոնագոնի (մոտ 966—1017) «Գրառումներ սնարին» ստեղծագործությունն է:

Մայր ցամաքի հետ քաղ. ու մշակութային կապերի նոր աշխուժացումը XI դ. ուղեկցվում է չին. և հնդ. սյուժեների լայն տարածումով: Ծնունդ է առնում գրական շարադրանքով պատմական երկի ժանրը («Էյգա-մոնոգատարի»):

IX—XII դդ. վերջի պոեզիայում նկատվում է երկու միտում. կազմվում են բազմաթիվ ժողովածուներ, և կանոնականացվում ձևերը: Ամենատարածված ժանրը թանկան էր:

Զարգացած ֆեոդալիզմի շրջանի (XII դ. վերջ —XVI դ.) գրականության համար բնորոշ է ռազմա-ֆեոդալական գ ու ն կ ի էպոպեայի առաջացումը (XIII—XIV դդ.), դրամատուրգիայի և ռ ե ն գ ա պոեզիայի

ծաղկումը (XIV—XV դդ.) և քաղաքային գրականության առաջացումը (XVI դ.): Պահպանվել է հինգ զույկի (չորսը վերաբերում է XIII դ., հինգերորդը՝ XIV դ. վերջին): Այդ շրջանում շարունակում էր զարգանալ նաև ձույիհիցու ժանրը: Տյոմեյ Կամոյի (1153—1216) «Գրառումներ մենախցից» (1212) և Կենկո-Հոսիի (1283—1350) «Գրառումներ ձանձրույթից» (1331) ստեղծագործություններում արտահայտված է ամենայն գոյի անցողիկության բուդդայական գաղափարը: XIV—XV դդ. խոշորագույն դրամատուրգն էր Զեամին (1363—1443): Այդ շրջանի պոեզիայում ծաղկման հասավ ռենգա ժանրը (Ցոսիմոտո Նիձյո, 1320—88, Սոգի, 1421—1502):

XVI դ. սկզբնավորվում է քաղաքային գրականությունը: Արհեստավորներն ու առևտրականները բանաստեղծական վարպետության մրցումներ էին կազմակերպում և կազմում հաղթողների բանաստեղծությունների ժողովածուներ: Ամենահայտնի ժողովածուն «Կանգինսյու»-ն է (1518):

Ճապոնա-եվրոպական կապերի հաստատումով (1542) ճապոներեն են թարգմանվում հատվածներ անտիկ հեղինակների երկերից: Առանձնահատուկ նշանակություն ունեցավ Եզոպոսի առակների թարգմանությունը (1593):

Ուշ ֆեոդալիզմի շրջանի (XVII դ.—XIX դ. 60-ական թթ.) գրականության մեջ գերիշխում էին դեմոկրատական միտումները: Դարաշրջանի խոշորագույն դրամատուրգն է Մոնձաեմոն Տիկամացուն (1653—1724): XVII դ. պոեզիայում տիրապետող դարձավ հ ո կ կ ու ժանրը: Գոյություն ունի հոկկուի երեք դպրոց. Տեյմոն (հիմնադիր՝ Տեյտոկու Մացունագա, 1571—1653), Դանրին (հիմնադիր՝ Սոյին Նիսիյամա, 1605—86) և Սյուֆու (գլխավորությամբ Բասյո Մացուոյի, 1644—1694, հոկկուի ամենահայտնի բանաստեղծը): Հոկկուի զարգացման ասպարեզում նոր փուլ բացեց Իսսա Կոբայասին (1763—1827): XVIII դ. վերջին քառորդում սյոգունների կառավարությունը խիստ հսկողության տակ առավ երկրի մշակութային կյանքն ու գրականության թեմատիկան: 1791-ին որպես բարոյազուրկ ստեղծագործություններ արգելվեցին որոշ գրողների (Սայկակու Իհարա, Կիսեկի Էձիմա) գործերը և ամբողջ գրական ժանրեր (ս յ ա ր ե բ ո ն հումորիստական, կենցաղագրական վիպակը): Գրողները որոնում էին նոր թեմաներ, գրական ձևեր, գաղափարներ: XVIII—XIX դդ. սահմանագծում սկսվեց պատմողական գրականության նոր ծաղկումը: Գյոձյա Կինրոյի «Ծաղկեպսակ» (1749) պատմվածքների ժողովածուով սկզբնավորվեց յ ո մ ի հ ո ն («ընթերցանության գիրք») ժանրը: Կենցաղագրական ուղղությունն իր տեղը զիջեց ֆանտաստիկ-արկածայինին: Ամենահայտնին Ակինարի Ուեդայի (1734—1809) «Մշուշապատ լուսինը» (1768) ժողովածուն է: XIX դ. սկզբներին Բակին Տակիձավան (1767—1848) ստեղծեց յոմիհոնի նոր տեսակ՝ խրատական վեպը: Նրա 300 վեպերից ամենահանրաճանաչը «Ութ շների պատմություն»-ն (1814): Քաղաքային բնակչության միջին ու ցածր խավերում տարածվեց դասական կանոնների հետ կապ չունեցող կատակային ու երգիծական պոեզիան: Կ յ ո կ ա յ ի («խելագար երգեր») ոսկեդարը համարվում է XVIII դ. 80-ական թթ., երբ լույս տեսան «Կյոկայի 10000 տարվա հավաքածու» (1783—85) և «Կյոկայի տաղանդների զանձարան» (1787) ժողովածուները:

Նոր գրականություն ստեղծելու շարժման հիմնադիրը եղավ Սյոյո Ծուբոուտին (1859—1935): «Վեպի էությունը» (1885) տրակտատում, ժխտելով գեղագիտական հին կանոնները, նա առաջին պլանի վրա դրեց զգայականությունն ու անհատական կյանքը: Սիմեյ Ֆտաբատեյը (1864—1909) «Լողացող ամպը» (1887—88) վեպով սկզբնավորեց քննադատական ռեալիզմը ճապոնական գրականության մեջ: Այդ ժամանակ հանրաճանաչ էին նաև հին ավանդույթների շարունակողներ Կոյո Օձակիի (1867—1903) և Ռոհան Կոդայի (1867—1947) ստեղծագործությունները: 1894—95-ի ճապոնա-չինական պատերազմից հետո, սրված ներքին հակասությունների պայմաններում, ծնունդ առավ, այսպես կոչված, ս յ ա կ ա յ ս յ ո ս ե ց ու ն (սոցիալական արձակը), որը կարևոր դեր խաղաց ռեալիզմի զարգացման մեջ (Ռոան Ուտիդա, 1868—1929, Ռոկա Տոկուտոմի, 1868—1927, Նաո Կինոսիտա, 1869—1937): XIX դ. 80-ական թթ. առաջացավ «նոր ոճի բանաստեղծության համար շարժումը», որի գլուխ կանգնած էին Տածոմիհո Ինոուեն (1855—1944), Ռյոկիծի Ցատաբեն (1851—99), Մասակաձու Տոյաման (1848—1900):

XIX դ. վերջի — XX դ. սկզբի պոեզիայի համար բնորոշ են առավելապես ռոմանտիկ միտումները: Ֆեոդալական կարգերի դեմ պայքարի պաթոսով աչքի է ընկնում արձակագիրներ Տոկոկու Կիտամուրայի (1868—1894), Տոսոն Սիմաձակիի (1872—1943), Ակիկո Ցոսանոյի (1878—1942) ստեղծագործությունը: Բանաստեղծներ Սայսյու Օնոեն (1876—1957), Կունյեն Կանեկոն (1876—1951) հաստատեցին ձ ի յ ու ս ի ն՝ խոսակցական լեզվով ազատ ոտանավորը, որը դարձավ XX դ. ճապոնական պոեզիայի հիմնական ձևը: Զիյուսիի սկզբնավորողը Ռյուկո Կավաձին (1888—1958) է:

Ազգային մշակույթի, Արևմուտքի հետ նրա կապերի զարգացման խնդիրներն են շոշափված Օկայ Մորիի (1862—1922) «Պատանին», «Վայրի սագը», «Մոխիր» (1910—1913) եռերգության մեջ:

XX դ. սկզբներին Ճ-ում ծավալվեց, այսպես կոչված, ս ի ձ ե ն ս յ ու գ ի ու ն դ ո ն (հանուն նատուրալիզմի շարժումը), որի վրա ազդեցություն է գործել Է. Զոլայի ստեղծագործությունը: Այդ շարժման մեջ առաջատար դիրք զրավեցին ռեալիստները: «Սիձենսյուգի» տերմինն սկսեց նշանակել և՛ նատուրալիզմ, և՛ ռոմանտիզմ: Գրականության զարգացման նոր ուղի բացեց Տակուբոկու Իսիկավայի (1885—1912) պոեզիան, որի վրա ազդեցություն էր գործել XX դ. սկզբի հակաիմպերիալիստական շարժումը:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ազդեցությամբ Ճ-ում բանվորական շարժման վերելքի պայմաններում 20-ական թթ. ծնունդ առավ ճապոնական պրոլետարական գրականությունը, որի ականավոր ներկայացուցիչներն էին վիպասաններ Սունաո Տոկունագան (1899—1958, «Անարև թաղամասը», 1929, հայ հրտ. 1937), Տակիձի Կոբայասին (1903—33) և բանաստեղծներ Սիգեհարու Նականոն (ծն. 1902), Հիդեո Օգուման (1901—40), Միցուհարու Կանեկոն (1895—1975): 1920-ական թթ. ռեալիստական դրամատուրգիայի մեջ սոցիալական սրությամբ ու քաղ. արդիականությամբ աչքի են ընկնում Տոմոյոսի Մուրայամայի (ծն. 1901) և Սակաե Կուբոյի (1901—58) պիեսները:

1920—30-ական թթ. առաջացան նեոռոմանտիզմը (Զյունիչիրո Տանիձակի, 1886—1965), նեոհումանիզմը (Սանեացու Մուսյանոկոձի, 1885—1975, Նաոյա Սիգա, 1883—1971, Տակեո Արիսիմա, 1878—1923), «նոր վարպետության դպրոցին» էր հարում Ռյունոսկե Ակուտագավան (1892—1927, «Թավուտում», հայ. հրտ. 1964): Ռեալիզմի զարգացման գործում մեծ դեր խաղաց վիպասանուհի Ցուրիկո Միյամոտոն (1899—1951): 1920-ական թթ. արմ. «ձախ» արվեստի ազդեցությամբ Ճ-ի գրականության մեջ առաջացան ավանգարդիստական հոսանքներ: 1930—1940-ական թթ. երկրի ֆաշիստականացման պայմաններում գրականության մեջ իշխում էր «սրբազան պատերազմը» ջատագովելու միտումը՝ Ասիհեյ Հինոյի (1907—1960) «Հացն ու զինվորները», «Հողն ու զինվորները», «Ծաղիկներն ու զինվորները» (1938—39) եռերգությունը:

Երկրորդ համաշխարհային պատերազմում ճապոնական միլիտարիզմի ջախջախումից հետո ավագ սերնդի գրողները դիմեցին ազգային բազմադարյան գրականության ավանդույթներին՝ Զյունիչիրո Տանիձակի «Մանր ձյուն» (1943—48), Ցասունարի Կավաբատա (1899—1972, Նոբելյան մրցանակ, 1968, «Հազարաթև կռունկը», հայ. հրտ. 1978): Ետպատերազմյան Ճ-ում դեմոկրատական գրականության զարգացման համար շարժումը գլխավորեցին գրողներ Կորեհիտո Կուրահարան (ծն. 1902), Ցուրիկո Միյամոտոն, Սիգեհարու Նականոն (ծն. 1902), Սունաո Տոկունագան: Տոմոձի Աբեն (1903—73) «Սպիտակ կոթողը» (1959) վեպում դնում է աշխարհի ճակատագրի համար մարդկանց պատասխանատվության հարցը: Ցեսկո Նոգամիի (ծն. 1885) «Լաբիրինթոս» (1948—56) ռեալիստական վեպ-էպոպեան պատմում է 1930—40-ական թթ. ճապոնական մտավորականության գաղափարաքաղաքական որոնումների մասին: Ֆումիկո Հայասիի (1903—51) «Լողացող ամպը» (1951) վեպում ցույց են տրված կյանքի հենարան չգտնող կնոջ դեգերումները: Ժամանակակից Ճ-ի սոցիալական սուր խնդիրներն են արտացոլված Զյումպեյ Գոմիկավայի (ծն. 1916) «Մարդկային գոյության պայմանը» (1958) և Տացուձո Իսիկավայի (ծն. 1905) «Պարիսպ մարդկային» (1958) վեպերում: Հիրոսիմայի ողբերգությանն են նվիրված Սանկիտի Տոգեի (1917—53) «Բանաստեղծություններ ատոմային ռումբի մասին» (1951) ժողովածուն, Ցոկո Օտայի (1906—

1963) «Մարդկային ցնցոտիներ» (1951) վիպակը, Մասուձի Իբուսեի (ծն. 1898) «Սև անձրև» (1960), Միծուհարու Ինոուեի (ծն. 1926) «Հողակոշտեր» (1963), Ցոսիե Հոտտայի (ծն. 1918) «Դատաստան» (1963) վեպերը: 1960—70-ական թթ. ռեալիզմն ու մոդեռնիզմը հաճախ միաժամանակ հանդես են գալիս նույն գրողի ստեղծագործության մեջ, օրինակ, Կոբո Աբեի (ծն. 1924) «Կինը ավազների մեջ» (1963), «Օտար դեմք» (1964), «Մարդարկղ» (1973) վեպերում: Կենձաբուրո Օեի (ծն. 1935) վեպերի («Ուշացած երիտասարդություն», 1962 ևն) մեծ մասի կենտրոնում երիտասարդ մարդու կյանքն է ետպատերազմյան Ճ-ում, տագնապը միջուկային աղետի սպառնալիքի հանդեպ: 1960—70-ական թթ. մեծ զարգացում ապրեցին գիտական ֆանտաստիկայի ժանրը և դետեկտիվ վեպերը (Մեյտյո Մացումոտո, ծն. 1909, Սակյո Կոմացու, ծն. 1931):

1940—50-ական թթ. վերջի դեմոկրատական պոեզիան ներկայացված է Սիգեձի Ծուբոիի (1898—1975), Միցուհարու Կանեկոյի (1895—1975), Ձյուն Օկամոտոյի (ծն. 1901) ժողովածուներով: Պրոլետարական գրականության ավանդույթները շարունակել են «Արշիպելագ» (1952) գրական միավորման բանաստեղծները: 1962-ին ստեղծվեց «Ճապոնիայի բանաստեղծների կոնգրեսը»՝ Սիգեձի Ծուբոիի գլխավորությամբ: Այստեղ առաջատար դիրք գրավեցին կոմունիստ բանաստեղծները: Ժամանակակից առավել հայտնի դրամատուրգներն են Ձյունձի Կինոսիտան (ծն. 1914), Կոբո Աբեն, Ցուսի Կոյաման (ծն. 1906), Կեն Միյամոտոն (ծն. 1926):

Ճապոնական արդի գրականության սոցիալիստական ուղղության զարգացման մեջ կարևոր դեր են խաղում Ճ-ի դեմոկրատական գրականության միության (1965) շուրջը համախմբված գրողները:

Ճ-ի *չինարենով գրականությունն* ստեղծվել է VIII դ., իր բարձրագույն վերելքն ապրել XIV—XV դդ.: Դեռևս XIII դ. Ճ. գաղթեցին ձեն աղանդի մեծ թվով կրթված չին վանականներ, որոնք հաստատվեցին գլխավորապես Կամակուրա քաղաքի վանքերում: Այստեղից տարածվեց չինարենով կրոնական ու փիլ. գրականությունը: XIV դ. կեսերին կենտրոնը փոխադրվեց Կիոտո, որտեղ տեղի ունեցավ շրջադարձ «կրոնից արվեստին»: Առավել նշանավոր բանաստեղծներն են Սոսեկի Մուսոն (1275—1351) և Ցուբայ Սեսսոնը (1290—1346): XVII—XIX դդ. սկզբներին նոր վերելք ապրեց չինարենով ճապոնական գրականությունը, հատկապես պոեզիան (Ձյունյան Կինոսիտա, 1621—98, Սանյո Ռայ, 1780—1832, Սյոձան Սակումա, 1811—64):

**Գրականագիտությունը:** «Գրականագիտություն» («բունգեյգակու») տերմինը Ճ-ում երևան է եկել XX դ. 20-ական թթ. կեսերին: 1950—70-ական թթ. մարքսիստական գրականագիտությունը ներկայացնում են Սեյձաբուրո Ցամադան (ծն. 1896, «Պրոլետարական գրականության պատմություն», 1954), Հիրոսի Կավագուտին (ծն. 1905), Ֆուսաձի Ցամամուրան (ծն. 1908), Սիձուո Սատոն (ծն. 1919,



Իսե տաճարային համալիրի սրբարանը (I հազարամյակի սկիզբ, վերակազմվել է 1953-ին) հյուսիս-արևմուտքից



Նարրայի Ցակուսիձի մենաստանի արևելյան պագոդան (VII—VIII դդ.)

Կիոտոյի Ռոկուոնձի տաճարի «Ոսկյա տաղավարը» (1394—1427)



«Գրականության մարքսիստական տեսություն», 1974): Հակամարքսիստական դիրքերում են կանգնած Ցոսիտակա Տակահասին (ծն. 1913, «Գրականության ուսումնասիրման խնդիրներ», 1958), Տակաակի Ցոսիմոտոն (ծն. 1924, «Կեղծ սիստեմի վերջը», 1962), Տակեո Օկունոն (ծն. 1926, «Արդի գրականության հիմունքները», 1967): Գրականությունների համեմատական ուսումնասիրման բնագավառում աչքի են ընկնում Կինձի Սիմատայի (ծն. 1901, «Ժամանակակից կոմպարատիվիստիկան», 1956), Սաբուրո Օտայի (ծն. 1909, «Թարգմանական գրականություն», 1959) աշխատությունները: Ճապոնական արդի գրականության խնդիրներին են նվիրված Հիդեո Օդագիրիի (ծն. 1916), Սեյիտի Ցոսիդայի (ծն. 1908), Միցուո Նակամուրայի (ծն. 1911) և այլոց ուսումնասիրությունները:

**XIV. Ճարտարապետությունը և կերպարվեստը**

Ճ-ի արվեստի հնագույն հուշարձանները վերաբերում են Ձյոմոն մշակույթին, որին հատուկ էին պարանահյուս նախշազարդերով անոթներ, կանանց արձանիկներ: Մ. թ. ա. I դ. բրոնզե առարկաների երևան գալով կավե անոթների ձևերն ու զարդերը պարզեցվում են: Մ. թ. III—VI դդ. նախնիների պաշտամունքի առաջացումով ընկըռվում է թագավորների կլոր և պայտաձև, խանդակով շրջապատված վիթխարի դամբարանների (կոֆուն) կառուցումը: Սրանց մակերևույթին տեղադրված սնամեջ արձանիկները (հանիվա) առանձնանում են դիմախաղի և շարժուձևի անմիջականությամբ: Ճ-ի հնագույն շինություններից են նաև հողաշեն շտեմարանները, որոնք կառուցվում էին բարձր սյուների վրա, հաստ գերաններից ու առանց պատուհանների: Իսեում և Իձումոյում այդ շտեմարանների տիպով կառուցվել են սինտոական սրբավայրեր, որոնք իրենց կառուցվածքային պարզությամբ ու հըստակությամբ հիմք են հանդիսացել ճապոնական ավանդական ճարտ-յան համար: VI դ. վերջին —VII դ. սկզբին, Ճ-ում բուդդայականության տարածմանը զուգընթաց, սկսել են կառուցվել չինական և կորեական տիպարների մենաստաններ, պագոդաներ և տաճարներ: Ասուկադերայի (588), Սիտեննոձիի (593), Հոկկիձիի (VII դ. սկիզբ) և Հորյուձիի (607) ոչ մեծ հրապարակներով և ներքին բազմազան պլանավորմամբ համալիրներն ընդգըրկել են պագոդաներ, Կոնդո գլխավոր տաճարը և միահարկ տաճարային շինություններ: Շենքերը կառուցվել են սպիտակ քարե հենահարթակի վրա՝ հենակահեծանային համակարգով, ունեցել են կարմիր լաքապատ սյուներին և բարձակներին հենվող կղմինդրե միահարկ կամ երկհարկ հոծ տանիքներ: Բուդդայական տաճարների կենտրոնական մասում կառուցվում էին խորաններ, ուր տեղադրվում էին բուդդայական աստվածությունների արձաններ (ոսկեզօծ բրոնզ և ներկած փայտ): VII դ. բարձրագույն աստվածությունների քանդակապատկերներին բնորոշ է խստաշունչ նկարագիրը: Կերպարներով ու դիրքերով առավել բազմազան են գթության աստվածությունների՝ բոսա-

ցուների (բոդհիսատվա) քանդակները (քնքշությամբ ոգեշնչված դեմքեր):

Ֆեոդալական կենտրոնացված պետության ստեղծման հետ է համընկնում ճապոնական առաջին մշտական մայրաքաղաքի (Նարա) հիմնադրումը (710), որը կառուցվել է չինական կանոնավոր հատակագծով քաղաքների օրինակով: Քաղաքի գլխավոր տաճարային համալիրները (Յակուսիձի, Տոդայձի, Տոսյոդայձի) առանձնանում էին հատակագծերի հստակ սիմետրիկությամբ, հրապարակների և թափորների ուղիների տարածական անսովոր մասշտաբայնությամբ, կոնստրուկցիաների վեհությամբ ու հզորությամբ: Տաճարների չափերի մեծացումով բուդդայական պլաստիկայի բնույթը փոխվել է, ավելացել արձանների քանակը: Նարայի շրջանում քանդակագործության մեջ օգտագործվել են բրոնզ, փայտ, չոր լաք, կավ: Երևան են եկել մոնումենտալ, ներքին ուժով լի, ճապոնական դիմագծերով հերոսականացված քանդակային կերպարներ, որոնց շարժումներն ավելի ազատ են, մարմինները՝ բոլորաձև ու պլաստիկ: Ստեղծվել են կիսաստվածների՝ մեծ արտահայտչականությամբ աչքի ընկնող կերպարներ, VIII դ.՝ բուդդայականության հայտնի քարոզիչների դիմաքանդակներ: Մեծ տարածում են գտել գրոտեսկային ծիսական դիմակները, բարձր մակարդակի է հասել որմնանկարչությունը (Հորյուձի տաճարի որմնանկարները):



Ա. Օկադա. թռչնապատկերով մատուցարան, լաք, փայտ (Արևելքի ժողովուրդների արվեստի թանգարան, Մոսկվա)

794-ից հետո, երբ մայրաքաղաքը տեղափոխվել է Հեյան (այժմ՝ Կիոտո), սկըզբնավորվել է այսպես կոչված Հեյանի ժամանակաշրջանը (IX—XII դդ.): Ֆեոդալիզմի զարգացման հետ կապված այս շրջանը նշանավորվում է մարդու ներաշխարհի նկատմամբ առավել հետաքրքրությամբ: Էնրյակուձի (782), Կոնգոբուձի (816) և Մուրոձիկի (VIII դ. վերջ — IX դ. սկիզբ) տաճարներն առանձնանում են փոքր չափերով, կառույցի և բնության մտերմիկ զուգորդումով, կանոնավոր հատակագծի բացակայությամբ: Խորանների կոմպոզիցիաները դառնում են բարդ: Աստծո կերպարը պատկերվել է բազմադեմ ու բազմաձեռք: Ներկվելով վառ գույներով՝ փայտե արձանիկները կորցրել են իրենց նախկին վեհությունը և ձեռք բերել սարսափեցնող դիվային կերպարանք: Բուդդայական գեղանկարչությանը հատկանշական են դարձել աշխարհաստեղծման խորհրդանշական համակարգերը՝ սրբապատկեր-մանդալները:



Ս. Ուեկի. իրան, փայտ (1953)

X—XII դդ. քաղաքային կյանքի վերելքը նպաստել է աշխարհիկ ճարտ-յան զարգացմանը: Բնակելի համալիրի նոր տիպը ձեռք է բերել այսպես կոչված սինդենձուկուրի ոճի հատկանիշներ, որը շարունակել է ազգային ճարտ-յան ավանդույթները: Սյուների վրա բարձրացված ընդարձակ, միադահլիճ տաղավարներին (սինդեն) երկու կողմից հարում են հիմնական շենքը համալիրի մնացած մասերին միացնող սրահները (տայնոյա): Սինդենի ճակատը բացվում է ավազածածկ հրապարակի վրա, որի հվ. մասում տարածվում է կղզյակներով, ժայռերով և արհեստական լճով ընդարձակ պարտեզը (Կիոտոյի կայսերական պալատը, 1789-ին վերակառուցվել է IX դ. տեսքով): Տաճարների ներքին հարդարանքում քանդակին զուգահեռ լայն կիրառություն են գտել զարդանախշը և որմնանկարը: Հեյանի շրջանում ծաղկում է ապրել Յամատո-է դպրոցի (X—XI դդ.) ազգային գեղանկարչությունը, որի շրջանակներում ձևավորվել է գրական երկ պատկերող գալարաթերթը (էմակիմոնո): Այդ նկարները (մասնավորապես «Գենձիմոնոգատարի» վեպի համար արվածները) առանձնանում են կերպարների էլեգիականությամբ և նրբին ու հստակ ուրվագծերով: Նրբագեղությամբ են աչքի ընկնում նաև այս շրջանի դեկորատիվ արվեստի տեսակները (գեղարվեստական լաքեր՝ մակիե, հովհարներ ևն):

XII—XIV դդ. սյոգունության հաստատմամբ (այսպես կոչված Կամակուրայի շրջան՝ Մինամոտո տան սյոգունների մայրաքաղաքի անունով) արվեստը դարձել է առավել լայն շրջանների սեփականություն, նրանում նկատելի է պարզության, կրոնական և աշխարհիկ սկզբունքների զուգորդման ձգտում: Այս շրջանին բնորոշ են ձեն աղանդի մենաստանները, որոնք առանձնանում են սյուներից, հեծաններից և թեթև միջնորմներից կազմված, շինության վրա իշխող հոյակերտ տանիքներով (Էնկակուձի մենաստանի գլխավոր շենքը Կամակուրայում, 1285): Բնակելի շենքերի ճարտ. լուծումներում գերակշռում են պարզությունն ու նպատակահարմարությունը: Կամակուրայի շրջանի քանդակագործությունը ձգտել է կերպարների վավերականության ու մոնումենտալության: Բուռն զարգացել է դիմաքանդակը (պատկերվել են բուդդայականության լեգենդար քարոզիչներ Մուտյակուն, Սեսինը, սինտոական սրբեր Հատիմոնը և ուրիշներ, ինչպես նաև զորավարներ): Ռազմիկների և մենակյացների դիմանկարներ են ստեղծվել նաև XII—XIV դդ. գեղանկարչության մեջ: Դեկորատիվ-կիրառական արվեստում բարձր մակարդակի է հասել սրերի և դաշույնների զարդապատումը: XIV—XVI դդ. ձեն ուսմունքի ազդեցությամբ ծաղկում է ապրել պարտեզապուրակային արվեստը [Ասիկագասյոգունների վիլլաների (հետագայում՝ Կինկակուձի և Գինկակուձի տաճարներ) պարտեզները Կիոտոյում, XIV դ.— XV դ. վերջ]: Սինդեն-ձուկուրի ճարտ. ոճը փոփոխվել է սյոին ոճով. վերացել են երկարավուն սրահները, ավելացել շարժական միջնորմներով առանձնացվող սենյակների թիվը, երևան է եկել գալարաթերթեր կախելու համար նախատեսված որմնախորշը (տոկոնոմա), սուրբ գրքերի գրադարակը (տանա): Հատակը ծածկվել է խսիրներով (տատամի), որոնք հետագայում դարձել են սենյակի մակերեսի չափման ստանդարտ միավոր: Շարժական պատերը ինտերիերն ավելի են մերձեցրել պարտեզին, որը ձևավորվել է տարբեր ոճերով. երևան են եկել խճից, ավազից ու քարից կազմված այսպես կոչված չոր լանդշաֆտները:

XIV—XVI դդ. անկում է ապրել քանդակագործությունը, ծաղկել տուշով գեղանկարչությունը (սույբոկու): Գալարաթերթային միագույն բնանկարների (վարպետներ Զյոսեցու, Սյուբուն, Սեսյու) զարգացմանը ազդել է չինական գեղանկարչությունը: XV դ. վերջին Յամատո-է դպրոցի ավանդույթները շարունակել և զարգացրել են Կանո (թռչուններ և ծաղկող ծառեր պատկերող կոմպոզիցիաների հեղինակներ Մասանոբու Կանո, Էյտոկու Կանո և այլք) և Տոսա (Միցունոբու Տոսա և ուրիշներ) դպրոցների ներկայացուցիչները: Բարձրագույն ծաղկման է հասել խեցեգործությունը (Սետո, Տամբա, Սիգարակի, Իգա, Բիզեն ևն արվեստանոցներ):

XVI դ. վերջին — XVII դ. սկզբին Ճ-ի ճարտ. կորցրել է իր միասնական ոճը: Պորտուգալական ճարտ-յան ազդեցությամբ, պաշտպանական նկատառումներով, կառուցվել են վիթխարի ամրոցներ, ուր համադրվել են կիկլոպյան շարվածքով գետնախարիսխն ու ավանդական փայտե վերնամասը (Աձուտիձյո, 1576, Օսակաձյո, 1583), կիսամութ, ընդարձակ ինտերիերները (նաև պալատների) հարդարվել են փայտի փորագրություններով և

Ս. Սատո. «Մանեկենը և մարդը» (1950-ական թթ.)



ոսկեզօծ որմնազարդանկարներով (Նիձյո ամրոց, Ֆուսիմի պալատ, XVII դ.):

XV դ. թեյի պաշտամունքի տարածումով ձևավորվել է ճարտ-յան այլ տիպ. թեյի ծիսակատարությունների համար պարտեզների խորքում կառուցվել են ընդգծված պարզությամբ տաղավարներ՝ առտնին իրերի և բնական շրջապատի գեղեցկությունը հաստատող կիսատաճար-կիսախրճիթներ: Տան և պարտեզի փոխազդեցությունը այստեղ դառնում է հատկապես մտերմիկ: Թեթև, բնության աշխարհին օրգանապես հաղորդակցվող բաց կոնստրուկցիայով թեյի տաղավարի գեղագիտությունը էական ազդեցություն է ունեցել Ճ-ի հետագա ողջ բնակարանաշինության վրա: Թեյի ծիսակատարությունները նպաստել են նաև խեցեգործության հետագա զարգացմանը: Վերելք է ապրել ձենապակու արտադրությունը՝ Կուտանի, Արիտա կենտրոններով:

Էդո (Տոկիո) նոր մայրաքաղաքի հետ է առնչվում գեղանկարիչ և գեղարվեստական լաքերի վարպետ Կորին Օգատայի և դեմոկրատ փայտագրող վարպետների մի ամբողջ սերնդի (Ուկիյյո-Է, Մորոնոբու Հասիկավա և ուրիշներ) ստեղծագործությունը: Նկարիչ-փայտագրողների ստեղծագործությունները բնորոշվում են մեղմ քնարականությամբ (Հարունոբու Սուձուկիի և Ուտամարո Կիտագավայի կանացի կերպարները) և հոգեբանական լարվածությամբ (Չյուրոբեյ Սյարակուի և Տոյոկունի Ուտագավայի թատերական կերպարները): Ճապոնական փայտագրությունը նոր մակարդակի են բարձրացրել Կացուսիկա Հոկուսայը և Հիրոսիգե Անդոն: XIX դ. վերջին—XX դ. սկզբին Ճ-ի քաղաքային ճարտ-յանը բնորոշ է ազգային և եվրոպական ոճերի էկլեկտիկ զուգակցումը, գեղանկարչության մեջ՝ իմպրեսիոնիզմի, պոստիմպրեսիոնիզմի և ֆովիզմի ազդեցությունը: 1920—30-ական թթ. գերակշռող է դարձել կուբիզմի, սյուրռեալիզմի և մոդեռնիստական այլ ուղղությունների ազդեցությունը:

Երկրորդ համաշխարհային պատերազմից (1939—45) հետո Ճ-ում արագորեն զարգանում են ճարտ., գրաֆիկան և դեկորատիվ արվեստը: Ճարտ-յան մեջ մեծ հետաքրքրություն է ցուցաբերվում ազգային շինարվեստին: Հիմնակմախքի թեթև կոնստրուկցիաները և ճարտ. ձևերը համատեղվում են նորագույն նյութերին և շինարարական եղանակներին (ճարտ-ներ՝ Կունիո Մայեկավա, Կենձո Տանգե և ուրիշներ): 1950-ական թթ. վերջից որոնումներ են տարվում ճարտ., քանդակագործական և գեղանկարչական ձևերի համադրման ուղղությամբ, ինտենսիվորեն յուրացվում են բետոնի և փայտի պլաստիկական և դեկորատիվ հնարավորությունները, լայնորեն կիրառվում են խճանկարն ու որմնանկարը: Չնայած շինարարության տեխնիկական և գեղագիտական բարձր մակարդակին, ժամանակակից ճապոնական ճարտ-յան մեջ քաղաքաշինության միասնական ծրագիր գոյություն չունի: Քաղաքների վերակառուցմանը խոչընդոտում են հողատարածությունների պակասը, յուրօրինակ սեյսմիկ պայմանները, միահարկ մասնավոր բնակարանների կառուցումը:

ժամանակակից գեղանկարչությանը բնորոշ է տարասեռ ուղղությունների և դպրոցների առկայությունը: Նրանում հակասական կերպով զուգակցվում են դեմոկրատական միտումները, արխաիկ ոճի ձգտումները, արևմտաեվրոպական և ամերիկյան ավանգարդիստական ուղղությունների ոճական սկզբունքները: Մի շարք վարպետներ ավանդական դեկորատիվությունը, բանաստեղծական հեքիաթայնությունը համատեղում են արդի աշխարհընկալման հետ: Տոսիկո Ակամացուի և Իրի Մարուկիի ստեղծագործություններին բնորոշ են քաղաքացիական պաթոսն ու ռեալիստական վարպետությունը: Ճ-ի արդի քանդակագործությունը ամենից քիչ է կապված ազգային ավանդույթներին: Եվրոպայում կրթված ժամանակակից քանդակագործները հետևում են արտասահմանյան տարբեր հոսանքների (Սիգերու Ուեկի, Տոմոնորի Տոյոֆուկու և ուրիշներ): Ետպատերազմյան դեմոկրատական շարժումների վերելքն արտացոլող գործերի հեղինակներ են Սեյբո Կիտամուրան, Կաձուո Կիկուտին և ուրիշներ: Ժամանակակից ճապոնական արվեստում ամենադեմոկրատականը և մասսայականը գրաֆիկան է, որը սերտորեն միահյուսում է ազգային յուրահատկությունն ու արդիական ձևամտածողությունը: Տաղասիգե Օնոյի, Մակոտո Ուենոյի, Տակիդայրա Ջիրոյի ստեղծագործություններում պատկերվում են հասարակ մարդկանց ճակատագրերը, Ճ-ի բնությունը:

**XV. Երաժշտությունը**

Ճ-ի հնագույն, ինքնատիպ երաժշտությունն իր զարգացման ընթացքում կրել է կորեական, հատկապես չինական, ինչպես նաև Հնդկաստանի և Հարավ-Արևելյան Ասիայի, XIX դարից՝ Եվրոպայի երկրների և ԱՄՆ-ի երաժշտական արվեստի ազդեցությունը: Մ. թ. առաջին դարերում Ճ-ի երաժշտությունը սերտորեն առնչվում էր սինտոական ծիսակատարություններին: VII դ. աշխարհիկ վոկալ և գործիքային երաժշտությունը կապված էր գիգակու պարային դրամային և դենգակու ու սարուգակու թատերական ժանրերին (սրանց հիման վրա հետագայում ձևավորվեց պալատական նոո թատրոնը): VII—IX դդ. չինական պալատական երաժշտության ազդեցությամբ ստեղծվել է գագակու (նրբագեղ երաժշտություն) պալատական արվեստը, որի մեջ իրենց զարգացումն են գտել զուտ ճապոնական ավանդույթները և դարձել Ճ-ի դասական երաժշտության հիմքը: Գագակուի մեջ առանձնանում էին կոգակու (հին երաժշտություն) և սինգակու (նոր երաժշտություն) ոճերը, կանգեն (զուտ գործիքային երաժշտություն) և բուգակու (պարին նվագակցող երաժշտություն) ժանրերը: Ճ-ի երաժշտության ազգային առանձնահատկությունները արտահայտվել են յուրահատուկ լադային կառուցվածքում. առանց կիսատոնների պենտատոնիկ լադերի հետ, որ պահպանվել են ժող. երաժշտության մեջ, տարածում են գտել 5-աստիճանի լադերը՝ կիսատոնային, ամբողջ տոնային և երկտոնային ինտերվալների հաջորդականությամբ (քաղաքային երաժշտության մեջ միյակոբուսի լադը, գեղջկական երաժշտության մեջ՝ ինակոբուսի լադը): XIV դ. ձևավորվել է նոո քնարական դրաման, որտեղ արտասանությունը զուգակցվում էր յուրահատուկ երգեցողությամբ, պարով և գործիքային նվագակցությամբ: Երաժշտական գործիքներից են՝ լարային (կամիթավոր)՝ կոտո (13-լարանի ցիտրա), սյամիսեն (լյուտնյայի տեսակ) և բիվա (Չինաստանից փոխառված 4-լարանի լյուտնյա), փողային՝ կագուրա-բուե և յոկոբուե, ռյուտեկի կամ ֆուե և բամբուկե ֆլեյտաների այլ տեսակներ, հիտիրիկի (հոբոյի տեսակ), հարվածային՝ տայկո, կոցուձումի, օ-ցուձումի (զանազան թմբուկներ), սյոկո (բրոնզե գոնգ), չինական ծագում ունեցող բազմաթիվ նվագարաններ: Նշանավոր կատարողներից էին Ցաուձի Կենձյոն և Կենձյո Իկուտան (XVII դ.), Կոսակու Ցամադան (XVIII դ. վերջ—XIX դ. սկիզբ), Կենձյո Ցաեձակին (XIX դ.): XVII դ. սկզբին առաջացած կաբուկի թատրոնի երաժշտությունը հիմնված է այսպես կոչված նագաուտայի («երկար երգ») վրա, ուր երգչի քառյակները հերթագայվում են գործիքային ինտերլյուդիայով: XIX դ. 2-րդ կեսին ներթափանցել է եվրոպական և ամերիկյան երաժշտության ազդեցությունը: 1879-ին մանկավարժ Սյուձի Իձավան (ամերիկացի մանկավարժ Լ. Ու. Մեյսոնի հետ) տարրական դպրոցներում մտցրել է խմբերգեցողության ընդհանուր ուսուցում, Տոկիոյում հիմնադրել երաժշտական հետազոտությունների ինստ. (1886-ից՝ Տոկիոյի երաժշտական դպրոց): XIX դ. վերջից Ճ-ում ելույթներ էին ունենում այլ երկրների, հետագայում՝ նաև Ռուսաստանի երաժիշտները: 1897-ին ստեղծվել է ճապոնական առաջին սիմֆոնիկ նվագախումբը: Եվրոպայում երաժշտական կրթություն ստացած առաջին ճապոնացի կոմպոզիտորներ Կոսակու Ցամադան, Կիյոսի Նոբուտոկին, Ցասուձի Կիյոսեն և Ցորիցունե Մացուդայրան հիմնադրեցին կոմպոզիտորների նոր ֆեդերացիա (1930-ից՝ ժամանակակից երաժշտության ճապոնական ասոցիացիա): Ազգային երաժշտական բանահյուսությունը և ճապոնական դասական երաժշտության ավանդույթները լայնորեն օգտագործվել սկսեցին 1940-ական թթ. վերջերից (Միտիո Մամիյա, Ցասուսի Ակուտագավա): 1950-ական թթ. վերջերին Ճ-ի երաժշտությունը կրեց ավանգարդիստների ազդեցությունը (1949-ին հիմնադրվել է Փորձարարական ստուդիա): 1950—60-ական թթ. կոմպոզիտորներից են Տորու Տակեմիցուն, Կաձուո Ֆուկուսիման, Տոսիրո Մայուձումին: 1950-ական թթ. սկզբին կազմակերպվեցին ինքնագործ երգչախմբեր. առաջիններից է (1952-ից) Տոկիոյի «Ճապոնիայի երգող ձայներ» կենտրոնական երգչախումբը (1964-ին ելույթներ է ունեցել ՍՍՀՄ-ում): 1960—70-ական թթ. կոմպոզիտորներ Տերույակի Նոդան, Ցոսիո Հասիմուրան, Սինիտիրո Իկեբեն շարունակում են փորձերը էլեկտրոնային երաժշտության և սոնորիստիկայի բնագավառում: Նշանավոր կատարողներից են՝ դիրիժորներ Կոմեի Աբեն, Մասասի Ուեդան, Ակեո Վատանաբեն, Ցուձի Տայաման, դաշնակահար Կեյկո Տանական, ջութակա-

հարուհի Յոկո Կուբոն: Երաժշտական կյանքի կենտրոնը Տոկիոն է: Ճ-ում գործում են 15 սիմֆոնիկ նվագախումբ, կամերա-գործիքային, երգչախմբային կոլեկտիվներ, «Նիպպոնիա», «Սիգենկամ» ավանդական դասական երաժշտական խմբերը են: Հիմնական ուսումնական հաստատություններից են՝ Արվեստների համալսարանը, Տոհո երաժշտական համալսարանը: Տոկիոյում, Օսակայում, Կարուիձավայում անց են կացվում երաժշտական փառատոներ: Տարածվել են էստրադային երաժշտության բազմազան ձևեր, ավելի ուշ ջազը և պոպ-երաժշտությունը:

**XVI. Բալետը**

Ճ-ի պարարվեստը ներկայանում է ավանդական դասական բույո պարով (հիմքը նոր թատրոնի խորեոգրաֆիան է) և եվրոպական բալետով: XVII դ. սկսել է ձևավորվել ազատ և շարժուն պարարվեստը, որը դարձել է կաբուկի թատրոնի բաղկացուցիչ մասը: Գործում են բույո պարի մի շարք դպրոցներ, որոնք գլխավորում են ճապոնական պարարվեստի վարպետներ Ձյուրակու Հանայագին, Կանյեմոն Ֆուձիման, Տոմիձյուրո Նակամուրան և ուրիշներ: Բույոյի պարերը ուղեկցվում են երաժշտությամբ և տեքստով: Ճապոնական դասական պարում իրանի շարժումները չեն սևեռվում: Հիմնական ուշադրությունը դարձվում է զգեստների և բեմական իրերի (հովհար, թմբուկ, ծաղկած ճյուղ են) գույների ներդաշնակ միահյուսմանը: XX դ. սկզբին Ճ-ում հետաքրքրություն է առաջացել եվրոպական դասական բալետի նկատմամբ: Արտասահմանում կըրթություն ստացած ճապոնական բալետի առաջին գործիչներ Մասահիդե Կոմակին, Միկիկո Մացույաման, Յաոկո Կաիտանին, Մոմոկո Տանին և ուրիշներ կազմակերպել ու ղեկավարել են բալետային խմբեր: Ստեղծվել են ազգային ինքնատիպ բալետներ: 1958-ին հիմնադրվել է Ճապոնական բալետային ասոցիացիան: 1964-ին Տոկիոյի Չայկովսկու անվ. բալետային դպրոցի հիման վրա ստեղծվել է «Տոկիո բալետ» թատերախումբը, որը մշտական ներկայացումներ է տալիս մայրաքաղաքում, այլ քաղաքներում, հյուրախաղերի մեկնում արտասահման (1966-ին, 1970-ին՝ ՍՍՀՄ):

**XVII. Թատրոնը**

Ճ-ի թատրոնի ակունքները հարում են երկրագործության տոնախմբություններին հին ծեսերին: VII—VIII դդ. բուդդայականության հետ Արևելյան Ասիայի երկրներից Ճ. են թափանցել թատերական տարբեր ձևեր: Այդ երաժշտապարային ներկայացումները (գիգակու և բուգակու) նպաստել են ճապոնական դասական թատրոնի ձևավորմանը: XIV դ. վերջին—XV դ. սկզբին փոխառնված և բուն ճապոնական ներկայացումներից ծագել է *նոր* թատրոնը, որն ընդգրկում էր երաժշտություն, պար և դրամատիկ գործողություն: Գլխավոր հերոսները կրում էին դիմակներ: Այդ ժանրը պահպանվում է և XX դ.: XVII դարից քաղաքների աճի հետ զարգացել են նաև թատերական այլ ժանրեր (տիկնիկային ձյորուրի և *կաբուկի* թատրոնները), որոնք արտահայտում էին ցածր խավի պահանջները և դարձան Ճ-ի թատրոնի առաջատար ավանդական ժանրերը: Ճ-ի կապիտալիստական զարգացման հետ կապված սոցիալական և քաղ. փոփոխությունները նկատելիորեն ազդել են թատերարվեստի վրա: XX դ. սկզբին երևան եկան նոր ժանրեր, որոնք ստեղծվեցին ավանդական թատրոնի նորացման (սիմպա, սինկոկուգեկի) և եվրոպական ձևերի փոխառության (ժամանակակից դրամա՝ սինգեկի, բալետ, օպերա) հետևանքով: Ճ-ի ժամանակակից թատերարվեստը պարզորոշ բաժանվում է ավանդական (բուգակու, նոո, կաբուկի, ձյորուրի) և եվրոպական (դրամա, օպերա, բալետ) թատրոնների: Դրանց մեջ ինքնատիպ շերտ են կազմում սիմպան՝ ճապոնական քաղքենիական մելոդրաման, և սինկոկուգեկին՝ մասսայական դրաման: Ավանդական թատրոնի խաղացանկը կազմում են ճապոնացի դասականների և ժամանակակից դրամատուրգների պիեսները: Ավանդական թատրոնում ռեժիսորներ չկան: 1970-ական թթ. առավել ճանաչված դերասաններից են. նոո թատրոնում՝ Մինորու Կիտան, Մոտոմասա Կուրո Հոսյոն, կաբուկի թատրոնում՝ Կանձաբուրո Նակամուրան, Ուտաեմոն Նակամուրան, Կոսիրո Մացումոտոն, երիտասարդ դերասաններ Էննոսկե Իտիկավան, Կիտիեմոն Նակամուրան, Ցումասաբուրո Բանդոն, սիմպայում՝ Ցանեո Միձուտանին, սինկոկուգեկիում՝ Սյոզո Սիմադան, Ռյուտարո Տացումին: 1966-ին Տոկիոյում ստեղծվել է «Կոկուրիցու գեկիձյո» թատերական ազգային կենտրոնը՝ Ճ-ի միակ պետական թատրոնը, որը պահպանում և զարգացնում է ավանդական ժանրերը: Կենտրոնին կից ստեղծվել է թատերական դպրոց, որը դերասաններ է պատրաստում կաբուկի և ձյորուրի թատրոնների համար: Սինգեկի թատրոնի խաղացանկը կազմում են եվրոպական և ամերիկյան դրամատուրգների դասական ու ժամանակակից պիեսները, ռուս. և սովետական հեղինակների, ինչպես նաև ճապոնացի արդի հեղինակների գործերը: Ճ-ում կա սինգեկիի մոտ 100 թատերախումբ, որոնցից ամենախոշորներն են՝ «Հայյուձա», «Մինգեյ», «Բունգակուձա» են: Այդ թատրոնի առաջատար գործիչներից են՝ ռեժիսորներ Կորեյա Սենդան, Ձյունկիտի Ունոն, դերասան-դերասանուհիներ Օսամու Տակիձավան, Էյտարո Օձավան, Իսուձու Ցամադան, Ցասուե Ցամամոտոն: «Հայյուձա» թատրոնին կից 1949-ին ստեղծված դպրոց-ստուդիան դերասաններ է պատրաստում սինգեկիի համար:

**XVIII. Կինոն**

Ճ-ում առաջին խաղարկային ֆիլմերը ստեղծվել են 1899-ին: Ազգային կինեմատոգրաֆիան զարգացել է երկու ուղղությամբ. գենդայգեկի՝ ժամանակակից (կենտրոնը՝ Տոկիոյում) և ձիդայգեկի՝ առասպելական և պատմական (կենտրոնը՝ Կիոտոյում) թեմաներով ժապավեններ: Ինչպես թատրոնում, կանանց դերերը կատարել են տղամարդիկ (օննագատները), ֆիլմերն ուղեկցվել են մեկնաբանություններով (բենսի): 1923-ին կինեմատոգրաֆիայի կենտրոնատեղի է դարձել Կիոտոն, որը խթանել է ձիդայգեկիի ծաղկումը («Սուսերամարտիկ երեխան», 1927, ռեժիսոր՝ Տեյնոսկե Կինուգասա, «Օսկա դատավորը», 1928, ռեժիսոր՝ Հիրոսի Ինագակի են): Գենդայգեկիի զարգացմանը նպաստել են Հեյնոսկե Գոսյոյի, Կիեհիկո Ուսիհարայի, Կենձի Միձոգուտիի ստեղծագործությունները: 1929-ին հիմնադրվել է ճապոնական պրոլետարական կինոյի միությունը («Պրոկինո», 1934-ին փակվել է): 1920-ական թթ. ստեղծվել են հասարակության սոցիալական կառուցվածքը քննադատող ֆիլմեր («Կենդանի տիկնիկ», 1929, ռեժիսոր՝ Տոմու Ուտիդա): Հնչուն կինոն հաստատվել է «Հարևանուհին և կինը» (1931, ռեժիսոր՝ Գոսյո) ֆիլմով: 1940-ական թթ. լավագույն ֆիլմերից են՝ «Չին» (1941, ռեժիսորներ՝ Սիրո Տոյոդա և Կաձիրո Ցամամոտո), «Մուհոմացուի կյանքը» (1943, ռեժիսոր՝ Ինագակի): Ետպատերազմյան առաջին տարիներին առավելապես զարգացել է վավերագրական կինոն: 1948-ին 6-ամսյա գործադուլից հետո «Տոհո» ընկերության ստուդիայից հեռացված առաջադեմ կինեմատոգրաֆիստները հետագայում ստեղծել են իրենց կինոընկերությունը և թողարկել 1950-ական թվականների սոցիալական լավագույն ֆիլմերը. դրանցից են «Եվ այնուամենայնիվ մենք ապրում ենք» (1951, ռեժիսոր՝ Տադասի Իմաի), «Անարև փողոցը» (1954, ռեժիսոր՝ Սացուո Ցամամոտո), «Լերկ կղզին» (1960, ռեժիսոր՝ Կանետո Սինդո) են: Այդ շրջանում Ճ. ֆիլմերի արտադրության ծավալով աշխարհում գրավում էր առաջին տեղը: Ճապոնական կինոյի համաշխարհային էկրան դուրս գալը պայմանավորված է ռեժիսորներ Միձոգուտիի («Մշուշապատ լուսինը», 1953), Ակիրա Կուրոսավայի («Ռասյոմոն», 1950, «Յոթ սամուրայներ», 1954, «Կարմիր մորուք», 1964), Կոն Իտիկավայի («Օտարականները», 1973) և Մասակի Կոբայասիի («Ապստամբը», 1967, «Քարացածություն», 1975) ստեղծագործություններով: 1960-ական թթ. երիտասարդ ռեժիսորները իրենց ստեղծագործություններում զարգացրել են ետպատերազմյան սերնդի ճակատագրի թեման («Պատմվածք դաժան պատանեկության մասին», 1960, ռեժիսոր՝ Նագիսա Օսիմա, «Հարսնացուն Անդից», 1966, ռեժիսոր՝ Սուսումու Հանի, «Կինը ավազների մեջ», 1964, ռեժիսոր՝ Հիրոսի Տեսիգահարա, «Կինը, որին ես լքեցի», 1969, ռեժիսոր՝ Կիրիո Ուրայամա են): 1970-ական թթ. ճապոնական ազգային կինոն ճգնաժամ է ապրում, կտրուկ իջել է ֆիլմերի գեղարվեստական մակարդակը, մեծ տարածում են գտել «սեքս-ֆիլմերը», կազմակերպված հանցագործությունների («էկուձա-էյգա»), աղետների («պանիկ-էյգա») մասին ֆիլմերը: 1975-ին թողարկվել է 396 (1960-ին՝ 547) լիամետրաժ գեղարվեստական ֆիլմ: Գործում են 4 խոշոր («Նիկկացու», «Սյոտիկու», «Տոհո», «Տոեյ») և բազմաթիվ մանր կինոֆիրմաներ:

Պատկերազարդումը տես 6-րդ հատորի 704—705-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակներ XXIX—XXX:

*Գրկ.* Геология и минеральные ресурсы Японии, пер. с англ., М., 1961; А к к е р м а н Э. А., Природные ресурсы Японии и перспективы японской экономики, пер. с

англ., М., 1955; Витвицкий Г. Н., Климат Японии, М., 1954; Зарубежная Азия. Физическая география, М., 1956; Динкевич А. И., Очерки экономики современной Японии, М., 1972; Современная Япония, под ред. И. А. Латышева, 2 изд., М., 1973; Япония в системе мировых хозяйственных связей, М., 1977; Прохожев А. А., Организация управления экономикой и государством в Японии, М., 1977; Куцовина Н. К., Рыбное хозяйство Японии, М., 1978; Статистический материал по экономике Японии (1960—1977), М., 1978; Эйдус Х. Т., История Японии с древнейших времен до наших дней, М., 1968; Японский милитаризм, М., 1972; Воробьев М. В., Соколова Г. А., Очерки по истории науки, техники и ремесла в Японии, М., 1976; Радуль-Затуловский Я. Б., Из истории материалистических идей в Японии, М., 1972; Поспелов Б. В., Очерки философии и социологии современной Японии, М., 1974; Козловский Ю. Б., Современная буржуазная философия в Японии, М., 1977; Григорьева Т. П., Логунова В. В., Японская литература. Краткий очерк, М., 1964; Конрад Н. И., Очерки японской литературы, М., 1973; Рехо К., Современный японский роман, М., 1977; Григорьева Т. П., Японская художественная традиция, М., 1979; Всеобщая история искусств, т. 1, 2 (кн. 2), 6 (кн. 1), М., 1956—65; Всеобщая история архитектуры, т. 1, 9, 11, М., 1970—73; Иофан Н., Из истории японской музыки 7—9 вв., в сб.: Искусство Японии, М., 1965; Гришелева Л. Д., Театр современной Японии, М., 1977; Ивасаки Акира, История японского кино, пер. с япон., М., 1965.

**ՃԱՊՈՆԻԱՅԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆ (ՃԿԿ)**, ստեղծվել է 1922-ի հուլիսին, Տոկիոյի հիմնադիր համագումարում: ՃԿԿ ստեղծմանը մասնակցել են Ս. *Կատայամա*, Ս. *Իտիկավա*, Կ. *Տոկուդա*, Մ. Վատանաբեն, Գ. Կոկուրյոն և ուրիշներ: Հիմնադիր համագումարն ընդունեց ՃԿԿ ժամանակավոր կանոնադրություն, ընթացիկ գործունեության ծրագիր և Կոմինտերնի մեջ մտնելու որոշում: ՃԿԿ, անլեգալ պայմաններում, պայքարել է բացարձակ կայսերական իշխանության տապալման և կիսաֆեոդալական կալվածատիրական սիստեմի վերացման ճանապարհով բուրժուա-դեմոկրատական հեղափոխության իրականացման համար, հանդես է եկել աշխատավորների դեմոկրատական իրավունքների և կենսական շահերի պաշտպանությամբ: 1920-ական թթ. ՃԿԿ պայքարել է իր շարքերում եղած աջ լիկվիդատորական և ձախ օպորտունիստական թեքումների դեմ: Այդ գործում ՃԿԿ-ին մեծ օգնություն է ցույց տվել Կոմինտերնը: Գործելով խոր ընդհատակում (մինչև 1945-ի հոկտեմբեր)՝ ՃԿԿ հանդես է եկել ռուս. և չինական հեղափոխություններին ճապոնական իմպերիալիզմի զինված միջամտության դեմ, պայքարել է խաղաղության, Ճապոնիայի և ՍՍՀՄ-ի աշխատավորների բարեկամության ամրապնդման համար: Երկրորդ համաշխարհային պատերազմում միլիտարիստական Ճապոնիայի պարտությունից հետո ՃԿԿ դուրս եկավ ընդհատակից: ՃԿԿ IV համագումարը (1945) ընդունեց կուսակցության կանոնադրություն և հաստատեց գործունեության ծրագիր: Այդ տարիներին ՃԿԿ մերկացրել է ճապոնական կառավարության հակաժողովրդական քաղաքականությունը, ընդլայնել իր ազդեցությունը բանվորների և գյուղացիների շրջանում: 1950-ական թթ. սկզբին խիստ սրվեցին կուսակցության ստրատեգիական և տակտիկական հարցերի վերաբերյալ ՃԿԿ ղեկավարության մեջ առաջացած տարաձայնությունները, որոնք հասցրին ՃԿԿ ղեկավարության և մի շարք կուսակցական կազմակերպությունների պառակտմանը: ՃԿԿ միասնությունը վերականգնելու և ձախ աղանդավորական թեքումը արմատախիլ անելու գործում հսկայական դեր խաղաց ՃԿԿ VII համագումարը (1958): 1959—60-ին ՃԿԿ ակտիվորեն մասնակցել է ճապոնա-ամերիկյան նոր «անվտանգության պայմանագրի» կնքման դեմ պայքարին: ՃԿԿ VIII համագումարը (1961) ընդունեց նոր ծրագիր, իսկ ՃԿԿ X համագումարը (1966) «Մեր կուսակցության մոտակա պահանջները» փաստաթղթում ավելի զարգացրեց այդ ծրագրի դրույթները: Կուսակցության XI համագումարը (1970) ընդունեց «1970-ական թթ. հեռանկարները և Ճապոնիայի կոմունիստական կուսակցության խնդիրները» ծրագրային փաստաթուղթ-բանաձևը, որում խնդիր դրվեց ստեղծել դեմոկրատական ուժերի միասնական ճակատ՝ խաղաղություն, չեզոքություն, դեմոկրատիա, դեմոկրատական կոալիցիոն կառավարության ստեղծում լոզունգների ներքո: 1970-ական թթ. կեսին ավելացավ ՃԿԿ անդամների թիվը, բարձրացավ կուսակցության հեղինակությունը: 1972-ին ներկայացուցիչների պալատի ընտրություններում ՃԿԿ ստացավ ձայների 10,5%-ը, 1975-ին խորհրդականների պալատի ընտրություններում այդ պալատի ՃԿԿ ֆրակցիան ավելացավ 9 անդամով: 1977-ին կայացած ՃԿԿ արտահերթ համագումարը հրապարակեց «Ազատությունների և դեմոկրատիայի դեկլարացիա»-ն, որի մեջ մանրամասն շարադրված են դեմոկրատիայի մասին ՃԿԿ տեսակետները: ՃԿԿ XV համագումարում (1980-ի մարտ) քննարկվեցին առաջիկա ընտրություններին նախապատրաստվելու, մասսայական պրոպագանդայի կատարելագործման, կուսակցության շարքերի հետագա ընդարձակման, բոլոր առաջադիմական ուժերի միավորման համար ուղիների փնտրման հարցեր: Համագումարը ձևակերպեց կոմունիստների գործունեության հստակ ծրագիր, որոշեց կոմկուսի հետագա պայքարի նպատակները և խնդիրները:

ՃԿԿ մասնակցել է Կոմունիստական և բանվորական կուսակցությունների (1957, 1960, Մոսկվա) միջազգային խորհրդակցություններին և հավանություն տվել ընդունված փաստաթղթերին (1969-ի խորհրդակցությանը ՃԿԿ չի մասնակցել): ՃԿԿ կառուցված է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքով: Կուսակցության բարձրագույն մարմինը համագումարն է: Համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում կուսակցության գործունեությունը ղեկավարում է ԿԿ, որն իր կազմից ընտրում է նախագահություն, իսկ նրա ներսում՝ մշտական բյուրո: ՃԿԿ իր շարքերում ունի 440 հզ. անդամ: ՃԿԿ ԿԿ նախագահն է *Ս. Նոսակա*, ԿԿ Նախագահության նախագահն է Կ. *Միյամոտո*: ՃԿԿ կենտրոնական օրգանն է «Ակահատա» («Կարմիր դրոշ») թերթը:

**«ՃԱՌԱԳԱՅԹ»**, քաղաքական, հասարակական, գրական շաբաթաթերթ: Լույս է տեսել 1947—52-ին, Ստամբուլում: Արտոնատեր-խմբագիր՝ Խ. Ամիրյան: Լուսաբանել է ստամբուլահայ համայնքի հասարակական-մշակութային կյանքը: Կառավարության ուշադրությունն է հրավիրել ազգային փոքրամասնությունների (մասնավորապես հայերի) վերաբերյալ միջազգային համաձայնագրերի (Լոզանի դաշնագիր, 1923) կատարման վրա, պահանջել Ազգային սահմանադրությամբ (1862) ստեղծված վարչական մարմինների վերականգնումը: Լայն տեղ է հատկացրել հայ սովետական գրողների արձակ և չափածո ստեղծագործություններին, տպագրել լուրեր ՀՍՍՀ կյանքի տարբեր բնագավառներից, սփյուռքի գաղթավայրերից:

**ՃԱՌԱԳԱՅԹԱՅԻՆ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆ**, օրգանիզմի վրա *իոնացնող ճառագայթների կենսաբանական ազդեցության* հետևանքով առաջացող հիվանդություն: Մարդու Ճ. հ. զարգանում է իոնացնող ճառագայթների, ինչպես նաև օրգանիզմ ներթափանցած (ներշնչվող օդի, ստամոքսա-աղիքային համակարգի կամ մաշկի միջոցով) *ռադիոակտիվ տարրերի* ազդեցության տակ: Տարբերում են սուր Ճ. հ., որն առաջանում է իոնացնող ճառագայթների համեմատաբար մեծ դոզաների միանվագ ընդհանուր ազդեցության հետևանքով, և քրոնիկական, որն սկիզբ է առնում չբուժվող, ձգձգվող սուր Ճ. հ-յան կամ իոնացնող ճառագայթների համեմատաբար փոքր դոզաների երկարատև ազդեցության հետևանքով:

Ճ. հ-յան կլինիկական արտահայտությունների (ճառագայթային սինդրոմ) ընթացքը պայմանավորված է օրգանիզմի ստացած իոնացնող ճառագայթների ընդհանուր գումարային դոզայով: 100 *ռ*-ի սահմաններում միանվագ ընդհանուր ճառագայթահարումն առաջ է բերում Ճ. հ-յան անցողիկ, թեթև ձև, 100 *ռ*-ից ավելին՝ միջին կամ ծանր արտահայտված ձևեր, որոնց դեպքում հիմնական ախտանշանները և հիվանդության ելքը կախված է արյունաստեղծ օրգանների ախտահարման աստիճանից: Իոնացնող ճառագայթների 600 *ռ*-ից բարձր միանվագ ընդհանուր ճառագայթահարումից մարդու օրգանիզմում սկիզբ են առնում օրգ. և գործառական (ֆունկցիոնալ) այնպիսի խոր և ուժեղ արտահայտված փոփոխություններ, որոնք 1—2 ամսվա ընթացքում հասցնում են մահվան:

Միջին ծանրությամբ արտահայտվող սուր Ճ. հ. ընթանում է մի քանի փուլով. 1. Ճ. հ-յան ընդհանուր նախնական հակազդեցության փուլ, զարգանում է ճառագայթահարումից անմիջապես հետո, տևում մի քանի րոպեից մինչև մի քանի օր: Նկատվում է սրտխառնոց, փսխում, ախորժակի բացակայություն, ընդհանուր թուլություն: Ծայրամասային արյան մեջ լինում է լիմֆոցիտանվազում,

նեյտրոֆիլային լեյկոցիտոզ, ոսկրածուծում՝ միելոկարիոցիտների քանակի պակասում, բջջային երիտասարդ ձևերի վերացում: 2. Ճ. հ-յան գաղտնի կամ թաքնված փուլ, սկսվում է ճառագայթահարումից մի քանի օր հետո և տևում է 3—4 շաբաթ: Հիվանդի մոտ նախնական հակազդեցության փուլին հատուկ կլինիկական երևույթները պակասում են, տեղի է ունենում կարծեցյալ բարելավում, երբեմն նկատվում է մազաթափություն: Ծայրամասային արյան մեջ լեյկոցիտների քանակն արագորեն պակասում է, նվազում են նաև թրոմբոցիտները և ռեթիկուլոցիտները: 3. Ճ. հ-յան արտահայտված կլինիկական երևույթների փուլ, հիվանդների ինքնազգացումը կրկին վատանում է, ջերմությունը բարձրանում: Մաշկում, լորձաթաղանթներում, ներքին օրգաններում, ուղեղում առաջ են գալիս արյունազեղումներ (արյունահոսական սինդրոմ): Արյան մեջ լեյկոցիտանվազումն ավելի է ուժեղանում (ճառագայթային լեյկոպենիա), սկիզբ է առնում սակավարյունություն, նյութափոխանակության պրոցեսների խանգարում: 4. Վերականգնման փուլ (տևում է 2—3 ամիս): Տեղի է ունենում Ճ. հ-յան բարեհաջող ընթացքի դեպքում: Բնորոշվում է ինքնազգացման լավացմամբ, ջերմության կարգավորումով, ախորժակի և քնի վերականգնումով: Ոսկրածուծի գործունեության բարելավման շնորհիվ ծայրամասային արյան մեջ ի հայտ են գալիս ռեթիկուլոցիտներ, երիտասարդ լեյկոցիտներ ու թրոմբոցիտներ: Վերականգնվում են նաև արյան ու մեզի կենսաքիմիական ցուցանիշները: Սուր Ճ. հ-ից հետո կարող են առաջանալ նյարդային համակարգի գործունեության և արյան շրջանառության խանգարումներ, չարորակ նորագոյացություններ, լեյկոզներ, սերունդների մոտ՝ զարգացման արատներ և ժառանգական հիվանդություններ: Ճ. հ-յան ընթացքի առանձնահատկությունները պայմանավորված են անհատական և տարիքային ռադիոզգայնությամբ. երեխաները, ծերերը և հղի կանայք առավել զգայուն են ճառագայթման հանդեպ: Քրոնիկական Ճ. հ. ինքնուրույն ախտաբանական միավոր է և սուր Ճ. հ-յանը նմանվում է իր փուլային ընթացքով: Նրան բնորոշ է երկարատևությունը, ընթացքի ալիքավորությունը: Սուր Ճ. հ-յան բուժումը փոխարինողական և ախտանշանային է: Արյունաստեղծ օրգանների գործառույթունները կարգավորելու համար՝ արյան փոխներարկում, ոսկրածուծի պատվաստում, արյունաստեղծման պրոցեսները խթանող դեղանյութեր, վարակիչ հիվանդությունների դեմ՝ անտիբիոտիկներ ևն: Քրոնիկական Ճ. հ-յան բուժման համար կիրառվում են ախտանշանային դեղամիջոցներ (սիրտ-անոթային, ստամոքս-աղիքային և այլ օրգան-համակարգերի գործունեությունը կարգավորելու նպատակով), հատուկ սննդակարգ, բուժական ֆիզկուլտուրա:

Կենդանիների Ճ. հ. առավել ուսումնասիրված է կաթնասունների ու թռչունների մոտ: Տարբերում են սուր և քրոնիկական Ճ. հ.: Սուր Ճ. հ. առաջանում է 150—200 (թեթև ընթացք), 200—400 (միջին), 400—600 (ծանր) և 600 *ռ*-ից բարձր (խիստ ծանր) դոզայով միանվագ ընդհանուր ճառագայթահարումից: Կախված հիվանդության ծանրության աստիճանից՝ կենդանիների մոտ նկատվում է ընկճվածություն, ախորժակի բացակայություն, փսխում, ծարավի զգացում, ջերմաստիճանի ժամանակավոր բարձրացում, մազաթափություն, լուծ (արյունային), սրտի գործունեության թուլացում, լորձաթաղանթներում արյունազեղումներ, արյան մեջ լեյկոցիտների և լիմֆոցիտների նվազում: Խիստ ծանր ընթացքի դեպքում՝ երերուն քայլվածք, մկանային ցնցումներ և մահ: Առողջացումը հնարավոր է հիվանդության միջին և թեթև ընթացքի դեպքում: Քրոնիկական Ճ. հ. ուղեկցվում է սրտի աշխատանքի աստիճանական թուլացմամբ, ներզատիչ գեղձերի ֆունկցիայի խանգարմամբ, հյուծվածությամբ, վարակիչ հիվանդությունների նկատմամբ օրգանիզմի դիմադրողականության անկմամբ: Մինչև բուժումը կենդանիներին դուրս են բերում վարակված վայրից, մաշկածածկույթներից ռադիոակտիվ նյութերը հեռացվում են ջրով, լվացող կամ այլ միջոցներով, այնուհետև արյան փոխներարկում, կլանիչներ, խորխաբեր դեղամիջոցներ:

Բույսերի Ճ. հ-ներից հատկապես վտանգավոր են α մասնիկների և նեյտրոնների ազդեցությունից առաջացածները: Ճառագայթման նկատմամբ առավել զգայուն են արմատներն ու երիտասարդ հյուսվածքները: Ճառագայթահարման ընդհանուր ախտանշան է աճման դանդաղումը: Բույսերի առանձին տեսակներ, սորտեր ունեն տարբեր ռադիոզգայնություն. օրինակ՝ տրադեսկանցիայի Ճ. հ-յան ախտանշաններն ի հայտ են գալիս 40, թրաշուշանինը՝ 6000 *ռ*-ով ճառագայթահարելուց: Միահացու դոզան բարձրակարգ բույսերի համար 2000—3000 *ռ* է, ստորակարգ բույսերինը, օրինակ, խմորասնկերինը՝ 30 000-ը: Ճառագայթահարված բույսերը և կենդանիներից ստացված մթերքները չի կարելի սննդի մեջ օգտագործել:

*Գրկ.* Киреев П. М., Лучевая болезнь, М., 1960; Радиационная медицина, 4 изд., М., 1968; Кротков Ф. Г., Человек и радиация, М., 1968; Линденбратен Л. Д., Медицинская радиология, М., 1969; Защита животных и растений от оружия массового поражения, Минск, 1968.

*Ռ. Հարությունյան*

**ՃԱՌԱԳԱՅԹԱՅԻՆ ՋԵՌՈՒՑՈՒՄ**, *ջեռուցման* տեսակ, որի դեպքում ջերմության մեծ մասը հաղորդվում է ճառագայթմամբ: Ճ. ջ-ման համակարգի ջեռուցիչ սարքերը տեղադրվում են կոնստրուկցիայի ներսում (առաստաղի, պատերի և հատակի հարթություններում): Որպես ջերմակիրներ օգտագործվում են տաք ջուրը, գոլորշին և օդը: Ճ. ջ-ման սարքերից են նաև պատող կոնստրուկցիաներին կից ամրացվող ջեռուցիչ պանելները:

**ՃԱՌԱԳԱՅԹԱՅԻՆ ՕՊՏԻԿԱ**, տես *Երկրաչափական օպտիկա*:

**ՃԱՌԱԳԱՅԹԱՍՆԿԵՐ** (Actinomycetes), ակտինոմիցետներ, շողասնկեր, բակտերիաների և սնկերի հատկություններով օժտված միկրոօրգանիզմներ: Հայտնաբերել է (1877) գերմ. գիտնական Յ. Հարցը: Հիմնականում աերոբ են, աճում են միջավայրի pH= 5—9-ի սահմանում: Տեսակների մեծ մասի համար լավագույն ջերմաստիճանը 25—30°C-ն է, սակայն աճը հնարավոր է նաև 3—40°C-ում: Որոշ թերմոֆիլ տեսակներ աճում են 45—50°C-ում: Ճ. գրամ դրական են, ունեն լավ զարգացած սնկամարմին՝ միցելիում, որի հիֆերի տրամագիծը 0,1—




Ճառագայթասնկերի սպորագոյացումը. *1.* ֆրագմենտացիայով, *2.* սեգմենտացիայով

1 *մկմ*-ից մինչև 1,5 *մկմ* է: Պարունակում են տարբեր ֆերմենտներ՝ պրոտեազներ, կերատինազներ, խիտինազներ ևն, որոնք Ճ-ին հնարավորություն են տալիս օգտագործելու բուսական և կենդանական մնացորդները: Որոշ տեսակներ ֆիքսում են մթնոլորտային մոլեկուլային ազոտը (տես *Ազոտֆիքսում*): Ճ-ի շատ կուլտուրաներից ստացվում են կենսաբանորեն ակտիվ նյութեր, անտիբիոտիկներ (ստրեպտոմիցին, մոնոմիցին), հորմոններ, վիտամիններ, ֆերմենտներ ևն: Ճ-ին բնորոշ է սպորներով բազմացումը: Վերջիններս գոյանում են հիմնականում օդային, առանձին դեպքերում՝ սուբստրատային միցելիումների վրա և լինում են գնդաձև, կոնաձև, ձողաձև, տանձաձև ևն: Սպորներն օժտված են բարձր դիմացկունությամբ: Ճ. կարող են բազմանալ նաև սնկամարմնի առանձին թելիկներով: Տարբերում են սպորագոյացման երկու ձև. ֆրագմենտացիոն և սեգմենտացիոն: Ճ-ի մեծ մասը սնվում է սպիտակուցային կամ ոչ սպիտակուցային օրգ. նյութերով: Կան ինքնասուն ձևեր, ինչպես նաև տեսակներ, որոնց համար ածխածնի աղբյուր են ծառայում մոմերը, խեժերը, պարաֆինները, նավթը: Տարածված են ամենուրեք. հողում, ջրամբարների տիղմում, օդում, բուսական մնացորդներում: Մասնակցում են բնության մեջ նյութերի շրջանառության, հողառաջացման, օրգ. նյութերի քայքայման պրոցեսներին: Որոշ ախտածին տեսակներ հիվանդությունների (ակտինոմիկոզ, տուբերկուլոզ, դիֆթերիա) հարուցիչներ են, առանձին Ճ. ախտահարում են բույսերին:

**ՃԱՌԱԳԱՅԹԱՎՈՐՆԵՐ** (Radiolaria), նախակենդանիների տիպի սարկոդայինների դասի ենթադաս: Մարմնի չափերը՝ 40 *մկմ*-ից 1 *մմ* և ավելի: Ծովային (հատկապես տաք) պլանկտոնային օրգանիզմներ են: Ունեն ներքին կմախք՝ կաշվենման ծակոտկեն պատիճի տեսքով, որի մեջ ներփակված է մեկ կամ մի քանի կորիզ ամփոփող ներպատիճային ցիտոպլազման: Վերջինս ծակոտիների միջոցով հաղորդակցվում է արտապատիճային ցիտոպլազմայի հետ: Էկտոպլազմայում համարյա միշտ հանդիպում են բազմաթիվ միաբջիջ ջրիմուռներ՝ զոոքսանտելներ: Ճ. լողում և կեր են որսում կեղծ ոտքերի օգնությամբ: Ճ. ունեն նաև սիլիցիումի օքսիդից կամ ստրոնցիումի սուլֆատից կազմված ասեղներ, որոնց տարբեր համադրությունից առաջանում է արտաքին կմախքը: Ճ-ի կորիզը պարունակում է մեծ քանակությամբ դեզօքսիռիբոնուկլեինաթթու (ԴՆԹ), որը պայմանավորված է դրանց արտակարգ պոլիպլոիդությամբ (քրոմոսոմների ավելի քան 1000 հապլոիդ հավաք):

Բազմանում են կիսվելով, առանձին տեսակների մոտ նկատվել է իզոգամ կոպուլյացիայի տիպի սեռական պրոցես: Հայտնի է Ճ-ի 7000-ից ավելի տեսակ:

**ՃԱՌԱԳԱՅԹՈՒՄ** էլեկտրամագնիսական, ազատ *էլեկտրամագնիսական դաշտի* առաջացման կամ այդ դաշտի քվանտների (ֆոտոնների) առաքման պրոցեսը: «Ճ.» ասելով երբեմն հասկանում են նաև ճառագայթված դաշտը: Միկրոսկոպիկ համակարգերի՝ ատոմների, միջուկների, մոլեկուլների կամ դրանց խմբերի Ճ. ունի սկզբունքային մի շարք առանձնահատկություններ: Այդ համակարգերի էներգիան քվանտացված է, այսինքն՝ կարող է ընդունել միայն ընդհատ հաջորդականություն կազմող որոշակի արժեքներ՝ $E_1, E_2, \ldots, E_m, \ldots$: Երբ համակարգը m-րդ վիճակից անցնում է n-րդ վիճակը, այն կարող է ճառագայթել $E_m - E_n$ էներգիայով ֆոտոն ($E_m > E_n$), որի հաճախականությունը ըստ Բորի պայմանի հավասար է՝ $\omega_{mn} = \hbar^{-1}(E_m - E_n)$. $\hbar$-ը Պլանկի հաստատունն է: Եթե համակարգի անցումը տեղի է ունենում ինքնաբերաբար, առանց արտաքին միջամտության, Ճ. կոչվում է սպոնտան կամ *ինքնակամ ճառագայթում*: Ըստ քվանտային տեսության՝ միավոր ժամանակում ինքնակամ Ճ-ման հավանականությունը որոշվում է $W_{mn} = \frac{4e^2}{3\hbar c^3} \times |\langle n/\vec{r}/m\rangle|^2$ բանաձևով, որտեղ e-ն էլեկտրոնի լիցքն է, c-ն՝ լույսի արագությունը, իսկ $|\langle n/\vec{r}/m\rangle|$ մեծությունը, որը կոչվում է տվյալ անցման դիպոլային մատրիցական տարր, ցույց է տալիս, թե անցման ժամանակ ինչպես է փոխվում լիցքի բաշխումը: Տվյալ համակարգի սիմետրիայից կախված՝ որոշ անցումների դեպքում մատրիցական տարրը կարող է հավասար լինել զրոյի (արգելված անցում): Այդպիսի անցման հավանականությունը հաշվում են, այսպես կոչված, քվադրուպոլային մոտավորությամբ, որը $\hbar^2c^2/e^4 \approx (137)^2$ անգամ ավելի փոքր արժեք է տալիս: Եթե գրգռված վիճակում գտնվող ատոմի վրա Բորի պայմանին բավարարող հաճախականության ֆոտոն է ընկնում, ապա ատոմն ինքը կարող է արձակել մեկ ուրիշ ֆոտոն, որի հաճախականությունը, բևեռացումն ու տարածման ուղղությունը ճիշտ նույնն են, ինչ որ ընկնողինը: Այս պրոցեսը, որի հավանականությունն ընդհանուր դեպքում համեմատական է «ստիպող» ֆոտոնների թվին, կոչվում է *ստիպողական ճառագայթում*: Գրգռված ատոմներից բաղկացած համակարգերում ստիպողական պրոցեսների շնորհիվ տարբեր ատոմների Ճ. լինում է կոհերենտ (տես *Կոհերենտություն*): Կոհերենտ ստիպողական Ճ. ստանալու համար ստեղծվել են հատուկ սարքեր՝ քվանտային գեներատորներ: Ֆոտոնների քանակը այդ սարքերում այնքան մեծ է, որ էլեկտրամագնիսական դաշտը կարելի է նկարագրել դասական էլեկտրադինամիկայի օրենքներով, իսկ ատոմները դիտարկել իբրև քվանտային օբյեկտներ: Նման մոտեցումը, զուգորդված ինքնակամ Ճ. հաշվի առնելու հնարավորություն տվող հատուկ կանոնների հետ, կոչվում է Ճ-ման կիսադասական տեսություն: Միջուկների Ճ. սկզբունքորեն չի տարբերվում ատոմների և մոլեկուլների Ճ-ից, սակայն այս դեպքում էական է ետհարվածը, որը հանգեցնում է առաքված ֆոտոնի հաճախականության շեղմանը: Վակուումում հավասարաչափ շարժվող լիցքավորված մասնիկը չի կարող ֆոտոն արձակել, որովհետև այդ պրոցեսը կհակասեր էներգիայի և իմպուլսի պահպանման օրենքներին: Սակայն նույն մասնիկը անհամասեռ միջավայրում ճառագայթում է: Պարզագույն դեպքում, երբ մասնիկը հատում է տարբեր բեկման ցուցիչներ ունեցող երկու միջավայրերի սահմանը, առաջանում է, այսպես կոչված, *անցումային ճառագայթում*: Իսկ երբ մասնիկը շարժվում է համասեռ միջավայրում $v > c/n$ արագությամբ (n-ը բեկման ցուցիչն է), առաջանում է Չերենկովի—Վավիլովի Ճ. (տես *Վավիլով—Չերենկովի էֆեկտ*): Վերջին երկու դեպքերում միջավայրն է ֆոտոններ առաքում, սակայն մեթոդական նկատառումներով Ճ. վերագրվում է շարժվող մասնիկին: Դասական էլեկտրադինամիկայի համաձայն, a արագացումով շարժվող ոչ ռելյատիվիստական մասնիկի ճառագայթած դաշտի հզորությունը հավասար է $2e^2a^2/3c^2$: Արագացում առաջացնող ուժի բնույթից կախված՝ Ճ. տարբեր անվանումներ ունի. *արգելակման ճառագայթում*, *սինխրոտրոնային ճառագայթում*:

Ճ-ման քվանտային տեսությունը պատմական և մեթոդական կարևոր նշանակություն ունի: Հենվելով հարաբերականության տեսության և քվանտային տեսության սկզբունքների վրա՝ այն տվեց էլեկտրադինամիկական երևույթների հետևողական բացատրությունը՝ հասնելով տեսական և փորձնական տվյալների հիանալի համաձայնության: Դրանով է թերևս պայմանավորված այդ տեսության հիմնական գաղափարների օգտագործումը թույլ և ուժեղ փոխազդեցությունների բնույթը հասկանալու համար:

*Գրկ.* Ахиезер А. И., Берестецкий В. Б., Квантовая электродинамика, 3 изд., перераб., М., 1969; Ландау Л. Д., Лифшиц Е. М., Теория поля, 6 изд., испр. и доп., М., 1973 (Теоретическая физика, т. 2).

*Ա. Մելիքյան*

**ՃԱՌԱԳՐՈՒԹՅՈՒՆ**, ճարտասանական գրականության տեսակ: Մեծ տեղ է գրավել միջնադարյան քրիստոնեական մատենագրության մեջ: Ճ-յանականավոր հեղինակներ են Բարսեղ Կեսարացին, Գրիգոր Նազիանզացին, Հովհան Ոսկեբերանը, Եփրեմ Ասորին, Հակոբ Մծբնացին: Ճ. հայ իրականության մեջ սկիզբ է առել V դ. սկզբին և ծառայել, հիմնականում, դավանական, մեկնողական, բարոյախոսական նպատակների: Ճ-յան ենթատեսակներն են ջատագովությունը, ճառը, քարոզը, թուղթը, կանոնը և մեկնությունը: Հայ իրականության մեջ առաջին հայտնի գործերից են Մեսրոպ Մաշտոցի «Յաճախապատում ճառերը», Եզնիկ Կողբացու «Եղծ աղանդոցը», Հովհան Մայրագոմեցու «Խրատ վարուցը»:

*Գրկ.* Յովհան Մանդակունի, Ճառք, Վնտ., 1860: Աբեղյան Մ., Երկ., հ. 3, Ե., 1968, էջ 13—14: Քենդերյան Հ., Հովհան Մայրագոմեցի, Ե., 1973:

*Հ. Քենդերյան*

**ՃԱՌԱՍՈՒՆ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Բասենի գավառում: 1909-ին ուներ 48 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Ճ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին, Կամախի կիրճում: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՃԱՌԱՔՅԱՆ** Տիգրան Կարապետի [ծն. 31.8.1909, Պետերբուրգ (այժմ՝ Լենինգրադ)], հայ սովետական ֆիզիոլոգ, ռադիոլոգ: Բժշկ. ծառայության գեներալ-մայոր (1961), բժշկ. գիտ. դ-ր (1967), պրոֆեսոր (1971): ՍՄԿԿ անդամ 1932-ից: 1931—71-ին եղել է զինվորական ծառայության մեջ: 1939-ին ավարտել է Լենինգրադի Ս. Մ. Կիրովի անվ. ռազմաբժշկական ակադեմիան: Եղել է նույն ակադեմիայի ֆիզիոլոգիայի ամբիոնի դասախոս, 1949-ից՝ ավագ դասախոս, 1951—71-ին՝ լաբորատորիայի վարիչ: 1970-ից դասախոսում է Լենինգրադի Ա. Ժդանովի անվ. համալսարանում: Գիտական աշխատանքները նվիրված են հիմնականում ռադիոկենսաբանության պրոբլեմային հարցերին: Պարգևատրվել է Կարմիր դրոշի, Կարմիր աստղի շքանշաններով:

**ՃԱՌԸՆՏԻՐ**, ընտիր կամ ընտրովի ճառերի ժողովածու հայ միջնադարում: Որոշակի բովանդակությամբ չի հատկանշվում, մինչդեռ տարատեսակներն ունեն իրենց որոշակի նպատակադրումը, կազմությունն ու անունը: Հնագույն ճառերի ժողովածու է VIII դ. գործիչ, Մաքենյաց վանքի առաջնորդ Սողոմոնի կազմած ժողովածուն, որ, Մշո վանքին պատկանելու պատճառով, *«Մշո ճառընտիր»* անունն է կրում: Կազմված է տերունական տոների կարգով՝ Ավետման, Ծննդյան, Մկրտության, Հոգեգալուստի, Արմավինյաց, Խորհըրդավոր գիշերի, Խաչելության, Համբարձման, Հարության վերաբերյալ քրիստոնեական ճանաչված հայրերի ճառերից.

կրում է նաև Տոնական անունը: Ճ-ի մեկ ուրիշ տարատեսակ, որը բացահայտում է տոների պատճառները, անվանվել է Տոնապատճառ: Ընտիր ճառերի երրորդ խումբը, որի մեջ ամփոփվում են բացառապես նահատակների մասին ճառ-պատմությունները, կրում է Վկայազիրք կամ Մարտիրոլոգ անունը: Նշված Ճ-ները սկզբնապես շարժական տոմարի կարգով դասավորված ճառեր էին, հետագայում՝ կայուն տոմարի հաստատումից հետո, մեծ մասամբ ամսակարգային բնույթ են ստացել: Ճ. միջնադարյան մյուս ժողովածուներից տարբերվում է գեղարվեստական շարադրանքով և նախատեսված է ոչ արարողական, այլ առավելապես եկեղեցուց դուրս ընթերցանության համար:

*Գրկ.* Մ ա թ ե ո ս յ ա ն Ա., Ե՞րբ և որտե՞ղ է գրվել Մշո Տոնական-ճառընտիրը, «ԲՄ», № 9, 1969: Ա յ ն թ ա փ յ ա ն Փ., «Տոնապատճառ» ժողովածուն, «ԲՄ», № 10, 1971:

*Մ. Ավդալբեգյան*

**ՃԱՎԱ** (Java), կղզի Մալայան արշիպելագում, Մեծ Զոնդյան կղզիների խմբում: Ինդոնեզիայի գլխավոր տնտ. շրջանն է: Տարածությունը 126,5 հզ. *կմ*² է, բն. մոտ 83 մլն (1975): Արմ-ից արլ. ձգվում է 1050 *կմ*: Ողողվում է Հնդկական օվկիանոսի և Ճավայի ծովի ջրերով: Ափերը հվ-ում գերազանցապես բարձր են, ուղղաձիգ, հս-ում՝ ցածր, հաճախ՝ ճահճապատ: Ռելիեֆում տիրապետում են ծալքավոր լեռները, հրաբխային բարձրավանդակները և կարստային կրաքարային սարավանդները: Առավելագույն բարձրությունը՝ 3676 *մ* (Սեմերու հրաբուխ): Ճ-ում կա 100 հրաբուխ (30 գործող): Հաճախակի են երկրաշարժերը: Հս-ում տարածված են ալյուվիալ բլրավոր հարթավայրերը: Կան նավթի, ծծմբի, մանգանի, ֆոսֆորիտի, ոսկու հանքավայրեր: Կլիման մերձհասարակածային է, մուսսոնային: Տարեկան տեղումները հարթավայրերում 1000—1400 *մմ* են, լեռներում՝ 3000—5000 *մմ*: Գետերը կարճ են, ջրառատ, օգտագործվում են ոռոգման համար: Տիրապետում են մոխրացած լատերիտային, լեռնաանտառային, կարմիր և ալյուվիալ հողերը: Տարածքի 25%-ը ծածկված է անտառներով: Զարգացած է հողագործությունը: Հարուստ է կենդանական աշխարհը: Խոշոր քաղաքներն են Ջակարտան, Բանդունգը, Սուրաբայան:

**Ճարտարապետությունը**: Հնդկ. և տեղական ավանդույթների զուգորդումը VII—VIII դդ. Կենտրոնական Ճ-ում կառուցվել են խորանարդաձև, աստիճանավոր հիմքով և բրգաձև ծածկով պսակված հնդուիստական տաճարներ («չանդի»): Նշանավոր է Բորոբուդուր բլուրտաճարը (VIII դ. վերջ—IX դ. սկիզբ), որն առանձնանում է նաև Բուդդայի բազմաթիվ արձաններով, բարձրաքանդակների առատությամբ: Սինգասարի (XIII դ.) և Մաջապահիթ (XIII դ. վերջ—XVI դ. սկիզբ) պետությունների ժամանակ ծաղկել է Արլ. Ճ-ի արվեստը: Կառուցվել են հատակագծում ազատ և ասիմետրիկ, ծավալների կոնտրաստ համադրությամբ լուծված, դինամիկ հորինվածքով տաճարային համալիրներ: XX դ. Ջակարտայում, Բանդունգում, Սուրաբայայում կառուցվել են խոշոր շենքեր: Տես նաև *Ինդոնեզիա* հոդվածի ճարտ. և կերպարվեստ մասը:

**Գրականությունը**: Ինդոնեզիայի ամենահին և առավել հարուստ գրականություններից մեկը՝ գրված ճավայերենով (տես *Ինդոնեզիա*, Գրականությունը): Մաջապահիտի (1293—մոտ 1520) կայսրության շրջանում գրականություն է ստեղծվել նաև միջին ճավայերենով: XVI—XVII դդ. Ճ-ում հաստատված իսլամը ծնունդ տվեց վարքագրական գրականության: XVIII դ. 2-րդ—XIX դ. 1-ին կեսը դասական գրականության վերջին, այսպես կոչված՝ «ճավայական վերածննդի» շրջանն է: XIX դ. վերջին ճավայերենով գրատպության և մամուլի տարածումը նպաստեց Ճ-ի գրականության նորացմանը: XX դ. Ճ-ի գրականության զարգացման գործում մեծ ավանդ ներդրեցին լուսավորիչ ու գրող Պադմոսուսաստրոն (1840—1926), գրողներ Մարտոդարջոնոն, Վիրատմոջոն և ուրիշներ: Ազնվականության և գաղութատիրական կարգերի քննադատությամբ հանդես եկան Մարկո Կարդոդիկրոմոն (1872—1932) և Ցոսոդիդագոն (1888—1958): Ծնունդ առավ նոր պոեզիա (Ինդոյո): XX դ. 2-րդ քառորդում և հատկապես Ինդոնեզիայի անկախության հռչակումից (1945) հետո ճավայացի շատ գրողներ սկսեցին գրել ինդոնեզերենով (մալայերեն): Արդի Ճ-ի գրականության տարածված ժանրը նովելն է: Սակավաթիվ վեպերը հիմնականում կրում են կենցաղային բնույթ:

*Գրկ.* տես *Ինդոնեզիա* հոդվածի գրականությունը:

**ՃԱՎԱՅԻ ԱՆԴՈՒՆԴ**, Զ ո ն դ յ ա ն ա ն դ ու ն դ, Հնդկական օվկիանոսի արևելքում: Ձգվում է Անդամանյան, Նիքոբարյան և Մեծ Զոնդյան կղզիների ստորջրյա լանջերի երկարությամբ: Երկարությունը 2900 *կմ* է, խորությունը՝ մինչև 7209 *մ*: Կան ցամաքային նստվածքներ և հրաբխային նյութեր:

**ՃԱՎԱՅԻ ԾՈՎ**, միջկղզային ծով, Խաղաղ օվկիանոսի արևմուտքում, Սումատրա, Ճավա և Կալիմանտան կղզիների միջև: Տարածությունը 552 հզ. *կմ*² է, միջին խորությունը՝ 111 *մ*, ջրի ծավալը՝ 61 հզ. *կմ*³: Ջրերի ամսական միջին ջերմաստիճանը 27—29°C է, աղիությունը՝ 29,5—33,5‰: Կա մակընթացություն: Զարգացած է ձկնորսությունը, մարգարտի արդյունահանությունը: Նավահանգիստներն են Ջակարտան, Սեմարանգը (Ճավա կղզի), Բանջարմասինը (Կալիմանտան):

**ՃԱՎԱՑԻՆԵՐ**, Ինդոնեզիայի ամենախոշոր ժողովուրդը: Ընդհանուր թիվը՝ մոտ 65 մլն (1975): Բնակվում են Ճավա կղզում (բացի արմ. մասից), Կալիմանտանի և Սումատրայի՝ Ճավային մոտ շրջաններում, ինչպես և Ինդոնեզիայի այլ շրջաններում և նրա սահմաններից դուրս: Խոսում են ճավայերեն և ինդոնեզերեն: Ճ-ի մեծ մասը դավանում է մահմեդականություն (XV—XVII դարերից), կան քրիստոնյաներ (XX դ. կեսից), պահպանվել են հնդուիստական, բուդդայական, ոգեպաշտական հավատալիքների վերապրուկներ: XVII դ. սկզբից Ճ. գտնվում էին Նիդերլանդների գաղութային լծի ներքո, որից ազատվեցին 1945-ին: Ճ-ի 80%-ից ավելին հողագործներ են, տնտ. կարևոր դեր ունեն թռչնաբուծությունը, ձկնորսությունն ու ձկնաբուծությունը: Ճ-ի մոտ հնուց ի վեր եղել են ազգային թատրոնի, երաժշտության, ճարտարապետության զանազան տեսակներ:

**ՃԱՎՃԱՎԱՁԵ** Ալեքսանդր Գարսևանի (1786, Պետերբուրգ—6.11.1846, Թիֆլիս), վրացի բանաստեղծ, հասարակական գործիչ, իշխան, գեներալ-լեյտենանտ (1841): Մասնակցել է 1812-ի Հայրենական պատերազմին և ռուս. բանակի 1813—14-ի արտասահմանյան արշավանքներին: 1814-ից Վրաստանում զբաղել է կարևոր ռազմա-վարչական պաշտոններ: Մասնակցել է 1826—28-ի ռուս-պարսկական պատերազմին: 1828—29-ին եղել է նորաստեղծ *Հայկական մարզի* վարչության պետ: Օժանդակել է պարսկահայերի 1828—1829-ի գաղթի կազմակերպմանն ու նրանց բնակեցմանը: 1828—29-ի ռուս-թուրքական պատերազմի ժամանակ նրա հրամանատարությամբ գործող ռուս. զորքերի փոքրաթիվ ջոկատը ազատագրել է Բայազետը, Ալաշկերտը: Նահանջող ռուս. զորքերի հետ նա Մուշի գավառից հարյուրավոր հայ ընտանիքներ գաղթեցրել ու բնակեցրել է Ալաշկերտի հովտում և Հայկական մարզում: 1832-ին Ճ. մասնակցել է ազնվականական դավադրությանը, որի նպատակն էր Վրաստանը անջատել Ռուսաստանից և իրականացնել որոշ սոցիալական բարեփոխումներ: 1833-ին աքսորվել է Տամբով: Վրաստան է վերադարձել 1834-ին: 1843-ին մասնակցել է *Շամիլի* դեմ արշավանքին:

1843-ից Ճ. զբաղվել է գրական-հասարակական գործունեությամբ: Նրա թիֆլիսյան տանը հավաքվում էին վրացի, ռուս և հայ գրողներ, հասարակական գործիչներ, այդ թվում՝ Ա. Ս. Գրիբոյեդովը, որը ամուսնացավ նրա աղջկա՝ Նինայի հետ: Ճ. վրաց ռոմանտիզմի հիմնադիրն է: Նրա բանաստեղծությունները մեծ ժողովրդականություն են վայելել և թարգմանվել տարբեր լեզուներով: Ճ. վրաց մշակույթը հարստացրել է ռուս. և համաշխարհային դասական ստեղծագործությունների թարգմանություններով: Նա սերտ կապեր է պահպանել հայ ռազմ., մշակութային, հոգևոր ու հասարակական գործիչների հետ (եղել է գեն. Ֆ. Հ. *Հախվերդովի* մտերիմ բարեկամներից):

*Երկ.* Վրաց գրականության ընտիր էջեր, Ե., 1961, էջ 110—111: Стихотворения, Тб., 1957.

*Գրկ.* Ե ր ի ց յ ա ն Ա., Ամենայն հայոց կաթողիկոսությունը և Կովկասի հայք XIX դարում, մաս 1, Թ., 1894: Զ ա վ ա ր յ ա ն Մ., Ուրվագծեր հայ-վրաց գրական-կուլտուրական կապերի պատմության XIX—XX դդ., Ե., 1959: Կ ա ր ա պ ե տ յ ա ն Ս., Վրաց գրական միտքը Հայաստանի և հայերի մասին, Ե., 1962, էջ 17—21:

*Գ. Սարգսյան*

**ՃԱՎՃԱՎԱՁԵ** Իլյա Գրիգորի [27.10(8.11). 1837, Ղվարելի—30.8(12.9). 1907, Մցխեթի շրջանի Ծիծամուրի գյուղի մոտ], վրացի գրող, հասարակական գործիչ: Ծնվել է իշխանական ընտանիքում: Սովորել է Պետերբուրգի համալսարանում (1857—61): 1861-ին վերադարձել է հայրենիք, գլխավորել վրաց. գրականության հեղափոխական-դեմոկրատական ուղղու-



Ի. Գ. Ճավճավաձե

թյունը. «Թերգդալեուլեբի» շարժման կազմակերպիչներից է: 1864-ից Ճ. գրական գործունեությանը զուգընթաց ծառայել է պետ. և հասարակական հիմնարկներում: Եղել է 1861-ի գյուղացիական ռեֆորմի կապակցությամբ ազնվականության ու գյուղացիների հարաբերությունները կարգավորող հանձնաժողովի անդամ, աշխատել է որպես հաշտարար դատավոր: 1877—1902-ին խմբագրել է «Իվերիա» թերթը: 1879-ին եղել է վրաց. թատերական ընկերության վարչության նախագահը: 1906-ին ընտրվել է Պետ. խորհրդի անդամ, որոշ ժամանակ ապրել Պետերբուրգում: Ինքնակալական-ճորտատիրական կարգերի հակառակորդ, Վրաստանի ազգային-ազատագրական շարժման ականավոր ներկայացուցիչ Ճ. մշտապես եղել է ոստիկանության հսկողության տակ: Գրաքննությունն արգելել է նրա շատ ստեղծագործություններ: Սպանվել է ցարական պահնորդության վարձկանների ձեռքով, Թիֆլիսից Սագուրամո գնալու ճանապարհին:

Ճ. լիովին բաժանել է հեղափոխական դեմոկրատների գեղագիտական հայացքները: Լինելով «արվեստը արվեստի համար» տեսության հակառակորդ՝ նա արվեստից պահանջել է հասարակական նշանակություն, գաղափարայնություն, ակտիվ մասնակցություն սոցիալական առաջընթացի համար պայքարին: Նրա հայացքները, որ լուրջ ազդեցություն են ունեցել վրաց 60-ականների վրա, արտահայտված են «Ուղևորի հիշատակարան»-ում (1861): Ճ. մերկացրել է ճորտատիրական կարգերը, լայնորեն արտացոլել ավատական կացութաձևի քայքայման ընթացքը: «Տեսիլք» (1859), «Մի քանի պատկեր կամ Դեպք ավազակի կյանքից» (1860) պոեմները, «Մուրացկանի պատմածը» (1859—62, հայ հրտ. 1912) վիպակը պատկերում են աշխատավոր ժողովրդի իրավազրկությունը, դասակարգային հակասությունները Վրաստանում: Ճ. հեղափոխության կողմնակից չլինելով հանդերձ, ընդունել է ճորտատիրական հարաբերությունների վերացման անխուսափելիությունը: «Արդյո՞ք մարդ է նա» (1859—1863, հայ. հրտ., «Մի՞թե մարդ է ադամորդին», 1891) վիպակը, որ կալվածատիրական կենցաղի երգիծական մերկացումն էր, հարուցել է վրաց ազնվականության վրդովմունքը: 1887-ին Ճ. ավարտել է «Օթարի այրին» վիպակը, որտեղ լուսաբանել է գյուղացիների ու կալվածատերերի հարաբերությունները՝ Վրաստանում ճորտատիրական իրավունքի վերացումից հետո: Ճ-ի պոեզիան ամբողջությամբ վերցրած հայրենասիրական, քաղաքացիական բնույթ ունի: Նրա շատ բանաստեղծություններ պատկերում են հայրենի բնությունը («Ղվարելիի սարերին», 1857), որոնք նույնպես զերծ չեն սոցիալական մոտիվներից: 1872-ին գրել է 1871-ի Փարիզի կոմունային նվիրված բանաստեղծություններ: Հասարակությանը ծառայելու գաղափարներով է տոգորված «Ճգնավորը» (1883) պոեմը: Ճ-ի պոեզիայի լեզուն պատկերավոր է, ժողովրդական: Նրա ստեղծագործությունները թարգմանված են աշխարհի շատ լեզուներով: Ճ-ի հուշաթանգարաններ են բացված Ղվարելի գյուղում (1937), բանաստեղծի կալվածքում՝ Սագուրամոյում (1951), Թբիլիսիում (1957):

*Երկ.* Ընտ. երկ., գիրք 1, Թ., 1937: Ավազակ Կակոն, Ե., 1937: Վրաց գրականության ընտիր էջեր, Ե., 1961, էջ 142—66: Բանաստեղծություններ, Ե., 1978:

*Գրկ.* Մ ի ք ա ր յ ա ն Ա. Գ., Ա ր վ ե լ ա ձ ե Բ. Վ., Իլյա Ճավճավաձե, Ե., 1978:

*Ս. Խուցիշվիլի*

**ՃԱՏՐԱԿ**, տես *Շախմատ*:

**ՃԱՐՃԱՏՈՒԿ** (Cichorium), բարդածաղկավորների ընտանիքի բազմամյա, երկամյա կամ միամյա խոտաբույսերի ցեղ: Բույսերի բոլոր օրգանները պարունակում են կաթնանման հյութ: Արմատներն իլիկաձև են, ցողունը՝ կանգուն (մինչև 1 *մ* բարձրությամբ): Արմատամերձ տերևները փետրաձև կտրտված են, ցողունայինները՝ ատամնաեզր նշտարաձև, իսկ զագաթնայինները՝ ամբողջաեզր և նստադիր: Ծաղկաբույլը զամբյուղ է՝ դասավորված տերևածոցերում և ցողունի գագաթնային մասի ու դրա ճյուղերի վրա: Ծաղիկները լեզվակավոր են, երկսեռ, կապույտ, երկնագույն, կապտակարմրավուն և սպիտակավուն: Պտուղը ունդ է: Հայտնի է 8—10 տեսակ (ՍՍՀՄ-ում՝ 4, ՀՍՍՀ-ում՝ 2): Ս ո վ ո ր ա կ ա ն կամ ա ր մ ա տ ա յ ի ն Ճ. (C. intybus) բազմամյա է, ունի երկար առանցքային արմատ, աճում է անջրդի հովիտների մարգագետիններում, անտառեզրերին, խոպան հողերում, ամայի տարածություններում, ցանքերում (հիմնականում կերաբույսերի հետ), ճանապարհների, առուների եզրերին: Լավ մեղրատու է: Արմատը պարունակում է ինուլին և ինտիբին: Մշակովի ձևերի հասունացած արմատն օգտագործվում է որպես սուրճի սուրոգատ և խառնուրդ, ինչպես նաև բարձրորակ սպիրտ ստանալու համար, իսկ տերևները՝ սալաթ: Վայրի Ճ-ի արմատն ախորժաբեր և մարսողությունը կանոնավորող միջոց է, իսկ արմատների թուրմն ունի հակամանրէային և մաձող հատկություն: Ս ա լ ա թ ի Ճ. (C. endivia) մշակվում է Միջերկրական ծովի առափնյա երկրներում և երբեմն՝ ՍՍՀՄ հվ. շրջաններում՝ որպես սալաթային բույս: Վայրի ձևը հայտնի չէ:

**ՃԱՐՄԱՆԱՅՆԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏ 482**, տեղի է ունեցել հայ-վրացական միացյալ և պարսկական զորաբանակների միջև Ճարմանայն դաշտում (Կուր գետի ձախափնյակում): Վրաց մարզպանությունը վերստին նվաճելու և Վախթանգ թագավորի ապստամբությունը ճնշելու նպատակով, 482-ի ամռանը պարսկ. մի խոշոր զորաբանակ, Միհրանի հրամանատարությամբ, Աղվանքի վրայով ներխուժում է Վրաստան և բանակում Ճարմանայն դաշտում: Վախթանգ թագավորը զինական օգնություն է խնդրում դաշնակից հոներից և հայերից: Հայկ. զորքը, Վահան Մամիկոնյանի և Սահակ Բագրատունու գլխավորությամբ, արագ երթով անցնում է Կուրը և վրաց ուժերի հետ բանակում հակառակորդի զորաճամբարի դիմաց: Հոները հրաժարվեցին խոստացած օգնությունից:

Վահան Մամիկոնյանը հայ-վրացական փոքրաթիվ զորքերի մարտակարգը դասավորեց աջ և ձախ թևերի, կենտրոնի և պահեստազորի: Կենտրոնի հրամանատարությունը հանձնարարեց Կամսարական եղբայրներ Ներսեհին ու Հրահատին (օգնական՝ Գնունյաց իշխան), աջ թևը՝ Բարշղ Վահևունուն (օգնական՝ Ստոռնի Գաբեղյան), ձախ թևը՝ Վախթանգ թագավորին, պահեստազորը՝ Սահակ Բագրատունուն (օգնական՝ Բաբկեն Սյունի): Ճակատամարտը սկսվեց փոխադարձ գրոհներով: Կամսարականները զարգացնելով կենտրոնի նախաձեռնությունը, ջախջախեցին իրենց դեմ կռվող զորամասին և մղեցին Կուրի աջ ափը: Սակայն աջ և ձախ թևերը չկարողացան զարգացնել այդ հաջողությունը: Ձախ թևը, առանց լուրջ դիմադրության, խուճապահար նահանջեց, իսկ աջ թևը մատնվեց ծանր կացության: Օգտվելով իրավիճակից, պարսից Միհրան զորավարը վերադասավորեց ուժերը և շահեց ճակատամարտը: Կռվում զոհվեցին Վահան Մամիկոնյանի եղբայր Վասակը և սպարապետ Սահակ Բագրատունին, գերվեցին Հրահատ Կամսարականը, Սյունյաց սեպուհ Ցազըը և ուրիշներ: Հայկ. զորքերը նահանջեցին Տայք: Ներսեհ Կամսարականը, հետապնդելով Պարսկաստան վերադարձող զորաբանակին, Բագրևանդ գյուղի մոտ անսպասելի գրոհով կարողացավ ազատել եղբորը՝ Հրահատին: Պարսից ուժերի հեռանալուց հետո Վահան Մամիկոնյանը աշնանը վերադարձավ Դվին, վերակառուցեց ուժերը և պատրաստվեց դիմակայել թշնամու նոր հարձակմանը:

*Գրկ.* Ղ ա զ ա ր Փ ա ր պ ե ց ի, Պատմութիւն Հայոց և Թուղթ առ Վահան Մամիկոնեան, Տփղիս, 1904:

*Մ. Կատվալյան*

**ՃԱՐՄԱՆԴ**, գոտու ծայրերը միմյանց ագուցող տախտակներ: Պատրաստում են ոսկուց, արծաթից, բրոնզից, պղնձից և այլ մետաղներից (հիմնականում նույն մետաղից, ինչից՝ գոտին), ձուլման, դրվագման, փորագրման, մանրաբուք (զուգաթել), սևադման եղանակներով, հաճախ զարդարում թանկարժեք և կիսաթանկարժեք քարե ակներով: Ճ. զարդարման և ձևերի ճոխությամբ առանձնանում է գոտու մյուս տախտակներից: Պեղումների ընթացքում Հայաստանի տարածքում հայտնաբերվել են բրոնզեդարյան, ուրարտ., միջնադարյան Ճ-ներ (գոտիների հետ մեկտեղ), որոնք պատրաստված են եղել հիմնականում ձուլմամբ և, կիրառականից բացի, երբեմն ունեցել են նաև պաշտպանական նշանակություն: XIX դ. վերջին և XX դ. սկզբին Հայաստանում գործածվել են հատած կիսազլանաձև, շրջանաձև, քառանկյունի, զմբեթաձև, նշա-

ձև, թիթեռաձև, զորտաձև և այլ Ճ-ներ: Ճոխ և թանկարժեք Ճ-ները համարել են ունևորության և իշխանության չափանիշ: Ճ-ների պատրաստման խոշոր կենտրոններ են եղել Վանը, Արծկեն, Կարինը, Մուշը, Երևանը, Ախալցխան, Շուշին ևն:



Գոտու արծաթե ճարմանդ (Ղարաբաղ, XVIII դ.)

Ճ. գործածվում է նաև կանանց և երեխաների որոշ հագուստների փեղկերը առջևի մասում միմյանց ագուցելու համար: Պարզունակ Ճ-ներ գործածվում են նաև ձիու թամբը ամրացնելու համար, դրվում են կոշիկների, հագուստների զանազան մասերի վրա (թևքեր, գրպաններ, ուսադիրներ)՝ կիրառական կամ դեկորատիվ նպատակներով: *Ն. Ավագյան*

**ՃԱՐՅԱՆ** Աբրահամ (1.9.1819, Կ. Պոլիս— 12.11.1892, Ս. Ղազար կղզի), հայ գիտնական, մանկավարժ, թարգմանիչ: Վենետիկի Մխիթարյան միաբանության անդամ 1840-ից: Երկար տարիներ եղել է Կ. Պոլսի Բերայի ու Քաղկեդոնի և Վենետիկի Մուրատ-Ռափայելյան վարժարանների տեսուչ, միաժամանակ դասավանդել մաթեմատիկա: Ունի դասագրքեր՝ «Համառօտ երկրաչափութիւն...» (1843), «Սկզբունք պատմութեան ազգաց...» (1846), «Պատմութիւն գաղղիացւոց» (h. 1—2, 1849): Թարգմանել է Սալլուստիոսի, Տակիտոսի, Թուկիդիդեսի, Պլատոնի, Նապոլեոն Գ-ի, Կեսարացու և այլոց գործերից:

**ՃԱՐՊԱԿԱԼՈՒՄ**, մարդու օրգանիզմում ավելցուկային ճարպահյուսվածքի կուտակում, երբ ճարպի սինթեզման ու կուտակման պրոցեսները գերակշռում են քայքայման պրոցեսներին: Զարգացման հիմնական մեխանիզմը ճարպային և ածխաջրային փոխանակության կոորդինացիայի խանգարումն է, որը հանգեցնում է ածխաջրերի փոխարկմանը ճարպերի: Տարբերում են Ճ-ման մի քանի աստիճաններ. I—ավելցուկային քաշը կազմում է բնականոնի մինչև 29%-ը, II—30—49%-ը, III—50—99%-ը, IV—100% և ավելի: Ըստ պատճառագիտական գործոնի Ճ. լինում է 1. ժառանգական (կոնստիտուցիոնալ), 2. ալիմենտար (սննդային), առաջանում է գերսնուցման և ածխաջրերով հարուստ սննդի չարաշահման պատճառով, 3. էնդոկրին՝ վահանագեղձի թերֆունկցիայի և մակերիկամների գերֆունկցիայի դեպքում, 4. դիէնցեֆալ, 5, կլիմաքսային, 6. ետծննդաբերական, 7. ուղեղային, պայմանավորված է գանգի ոսկրերի հաստացմամբ (Մորգանի հիվանդություն) և 8. խառը ձևեր: Կարևոր դերը պատկանում է գլխուղեղի դիէնցեֆալ հատվածի հագեցման կենտրոններին, որոնց զգայնությունը բնածին կամ ձեռքբերովի պատճառներով իջնելիս, հագեցման զգացումը դեպի սնունդը ընկնում է, մարդը դառնում է շատակեր և գիրանում է: Ճ. օրգանիզմի վրա թողնում է բացասական ազդեցություն (առավելապես վաղ հասակում) և պատճառ դառնում սեռական օրգանների թերզարգացման, կանանց մոտ՝ չբերության: Առաջացնում է նաև ուղեղի թթվածնաքաղց (հիպօքսիա)՝ արտահայտվում է քնկոտությամբ, հիշողության և մտավոր ունակությունների թուլացմամբ, սիրտ-թոքային անբավարարություն, հենաշարժական ապարատի փոփոխություններ, հոդերում և դրանց շուրջը աղերի կուտակում, նյութափոխանակության խանգարումներ, օրգանիզմի վաղաժամ ծերացում: Գոյություն ունեն նաև Ճ-ման տեղական ձևեր, լ ի պ ո դ ի ս տ ր ո ֆ ի ա կամ Բարակեր-Սիմոնդսի հիվանդություն. առավելապես բնորոշ է կանանց, ճարպակալվում է կոնքի ու ազդրերի շրջանը, իսկ դեմքը և իրանի վերին հատվածը նիհարում է: Տ ե ղ ա կ ա ն Ճ. կամ Դերկումի հիվանդություն, ընթանում է մաշկի տակ բազմաթիվ, երբեմն ցավոտ, ճարպագնդիկների առաջացմամբ: Մ ա դ ե լ ու ն գ ի հիվանդություն, որի դեպքում ճարպը, օձիքի նման, կուտակվում է պարանոցի շուրջը: Նշված 3 ձևերի առաջացման պատճառները հայտնի չեն:

Բ ու ժ ու մ ը. ճիշտ հաշվեկշռված դիետա՝ ածխաջրերի և ճարպերի սահմանափակմամբ, ֆիզիկական բարձր ակտիվության ապահովում, բուժական ֆիզկուլտուրա, ախորժակն ընկճող և ճարպալուծող դեղամիջոցներ:

**ՃԱՐՊԱԿԵՐՊԵՐ**, ճ ա ր պ ա ն մ ա ն ն ե ր, լ ի պ ո ի դ ն ե ր, օրգանական նյութեր, որոնք մոլեկուլի կառուցվածքով և ֆիզիկաքիմիական հատկություններով նման են *ճարպերին*: Գլիցերինի և բարձրագույն ճարպաթթուների, սպիրտների, ալդեհիդների ևն միացությունների ածանցյալներ են: Կարևոր նշանակություն ունեն բուսական և կենդանական աշխարհում: Ճարպերի հետ կազմում են *լիպիդների* դասը: Տերմինը հնացած է և համարյա չի գործածվում:

**ՃԱՐՊԱՅԻՆ ՄԻԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, տես *Ացիկլիկ միացություններ*:

**ՃԱՐՊԱՊՈՉԱՎՈՐ ՈՉԽԱՐՆԵՐ**, ցեղեր, որոնք պոչի հատվածում ունեն ճարպի կուտակում: Ըստ պոչի երկարության ու ձևի տարբերվում են կարճ ճարպապոչավոր (բուրյաթական և մոնղոլական ոչխարները) և երկար ճարպապոչավոր խմբեր: Վերջինը բաժանվում է 4 (A, B, C, D) ենթախմբի: A ենթախմբի ոչխարներն ունեն երկար և ուղիղ ճարպապոչ (վոլոշյան, մալիչ, իմերեթինյան ցեղերը), B-ինը՝ S տառի նման ծռված, երկար, ծայրը բարակ ճարպապոչ (կարակուլյան, կարաչայան, օսեթական ևն), C-ինը՝ S տառի ձևով ծռված երկար ճարպապոչ, ճարպը կուտակվում է պոչի ամբողջ երկարությամբ և առաջացնում ճարպային երկու բարձիկ (մազեխի, բալբասի մոտ ևն), D-ինը՝ միջին երկարության ճարպապոչ, որը միջնամասում ծռված է դեպի վերև, իսկ հաջորդող հատվածում՝ դեպի ներքև, պոչի ծայրը չճարպակալված է և բարակ (թուշինյան, լեզգինյան, Բոզախ, Ղարաբաղի, ավարական ևն): Ճարպապոչը տնտ. օգտակար հատկանիշ է, ժառանգաբար փոխանցվում է և հաշվի է առնվում սելեկցիայի ժամանակ, քանի որ կերային անբարենպաստ պայմաններում այն ոչխարի համար սննդի պահեստի աղբյուր է: Ճ. ո. բազմացվում են նրբագեղմ և կիսանրբագեղմ ոչխարներով: *Մ. Քարամյան*

**ՃԱՐՊԱ-ՍԵՌԱԿԱՆ ՍՆՈՒՑԱԽԱՆԳԱՐՈՒՄ**, ա դ ի պ ո զ ո-գ ե ն ի տ ա լ դ ի ս տ ր ո ֆ ի ա, Պ ե խ կ ր ա ն ց ի-Բ ա բ ի ն ս կ ու-Ֆ ր ո յ լ ի խ ի հ ի վ ա ն դ ու թ յ ու ն, դիէնցեֆալ-հիպոֆիզային համակարգի ախտահարում. արտահայտվում է *ճարպակալմամբ* և *սեռական օրգանների* թերզարգացմամբ: Առավելապես հանդիպում է վաղ մանկական տարիքում, երբեմն՝ ավելի ուշ: Պատճառը դիէնցեֆալ շրջանի հանգույցների ախտահարումն է, որոնք արտադրում են *հիպոֆիզի* գոնադոտրոպ հորմոնների սեկրեցիան կարգավորող հատուկ գործոններ: Հիվանդության առաջացմանը նպաստում են նաև ժառանգական նախատրամադրվածությունը, հիպոթալամուսային շրջանի բորբոքային, հազվադեպ՝ ուռուցքային բնույթի փոփոխությունները: Ախտանշաններն ի հայտ են գալիս վաղ մանկական տարիքում: Երեխաների մոտ սեռական օրգանները չեն զարգանում, հաճախ ամորձիները մնում են որովայնի խոռոչում (կրիպտօրխիզմ): Ճարպակալումը լինում է կրծքագեղձերի, կոնքի, ազդրերի շրջանում: Մաշկը գունատ է, սառը, բարակ, թափանցիկ, մազածածկը՝ նոսր: Տղաների դեմքը չի մազակալում: Գլխի մազերը բարակ են, փափուկ, մետաքսանման: Հիվանդության ելքն առավելապես բարենպաստ է:

Բ ու ժ ու մ ը. հորմոնային դեղամիջոցներ, ցածր կալորիականությամբ դիետա, ֆիզիկական բարձր ակտիվության ապահովում, դիէնցեֆալիտների առկայության դեպքում՝ հակաբորբոքային դեղամիջոցներ: *Պ. Վարդապետյան*

**ՃԱՐՊԵՐ**, օրգանական միացություններ. գլիցերինի և միահիմն ճարպաթթուների էսթերներ (եռգլիցերիդներ): Պատկանում են *լիպիդների* դասին: Բույսերի, կենդանիների և միկրոօրգանիզմների բջիջների հիմնական բաղադրամաս են: Կառուցվածքը համապատասխանում է հետևյալ ընդհանուր բանաձևին.



$$\begin{array}{l} CH_2\text{—O—CO—}R' \\ | \\ CH\text{—O—CO—}R'' \\ | \\ CH_2\text{—O—CO—}R''', \end{array}$$

որտեղ R′, R″ և R‴-ը ճարպաթթվի ռադիկալներ են: Եթե բոլոր ռադիկալները նույնն են, Ճ. կոչվում են պարզ, եթե տարբեր՝ խառը: Բնական Ճ. հիմնականում խառն են և, որպես կանոն, կազմված են զույգ թվով ածխածնի ատոմ պարունակող (մոտ 40 տեսակ, հիմնականում $C_{18}$—$C_{20}$) չճյուղավորված ճարպաթթուներից: Հայտնի են 1300-ից ավելի Ճ., որոնք

ըստ ծագման բաժանվում են կենդանականի և բուսականի: Արհեստական Ճ. առաջին անգամ սինթեզել է Մ. Բերթլոն (1854):

Ճ-ի ֆիզիկաքիմիական հատկությունները պայմանավորված են դրանց կազմում եղած հագեցած և չհագեցած ճարպաթթուների տեսակով ու հարաբերակցությամբ: Հագեցած ճարպաթթուների գերակշռության դեպքում Ճ. պինդ են, չհագեցածների դեպքում՝ հեղուկ կամ քսուքանման: Հալման հաստատուն կետ չունեն: Տաքացնելիս քայքայվում են՝ առաջացնելով ցնդող նյութեր (ակրոլեին): Ջրում չեն լուծվում, բայց առաջացնում են էմուլսիա, լավ լուծվում են օրգ. լուծիչներում, վատ՝ սպիրտում: Գերտաք ջրային գոլորշիով, անօրգանական թթուներով կամ հիմքերով մշակելիս հիդրոլիզվում են (տես *Օճառներ*): Կենդանական ճարպերից և *ձեթերից* շատերը արժեքավոր սննդամթերք են, օգտագործվում են նաև բժշկության մեջ, օծանելիքի ստացման և այլ նպատակներով:

Ճ. օրգանիզմում: Ճ. օրգանիզմի էներգիայի հիմնական աղբյուրն են և մասամբ ծառայում են որպես կառուցվածքային (թաղանթներում, վերբջջային օրգանելներում) նյութեր: Տարբերում են պահեստային և պրոտոպլազմային Ճ.: Առաջինները կուտակվում են ենթամաշկային ճարպաբջջանքում և *ճարպոնում*: Իրենց ցածր ջերմահաղորդականության շնորհիվ օրգանիզմը պաշտպանում են ջերմության կորստից, որը հատկապես կարևոր է ծովային տաքարյուն կենդանիների (կետեր, փոկեր ևն) համար: Պրոտոպլազմային Ճ. ածխաջրերի և սպիտակուցների հետ կոմպլեքսների ձևով մտնում են բջջի պրոտոպլազմայի մեջ և մասնակցում բջջի կենսաքիմիական պրոցեսներին: Պահեստային Ճ-ի քանակն օրգանիզմում փոփոխական է, իսկ պրոտոպլազմայինը՝ հաստատուն: Որպես էներգիայի աղբյուր Ճ. գերազանցում են ածխաջրերին. 1 *գ* Ճ. մինչև $CO_2$ և $H_2O$ օքսիդացնելիս անջատվում է 9,3 *կկալ* ջերմություն: Ճ. միաժամանակ օրգանիզմում ջրի կուտակման յուրատեսակ միջոց են. 100 *գ* Ճ-ի լրիվ օքսիդացումից առաջանում է 140—150 *մլ* ջուր, որը բացառիկ դեր է խաղում չոր և անապատային վայրերում ապրող կենդանիների համար: Ճ. սննդի անհրաժեշտ բաղկացուցիչ մասն են: Չափահաս մարդու օրական ծախսի նորման 60—70 *գ* է: Ճ-ի սննդարարությունը բարձր կալորիականությունից բացի, պայմանավորված է նաև նրանցում արժեքավոր նյութերի (ֆոսֆոլիպիդներ, ստերիններ, վիտամիններ A, D, E ևն) առկայությամբ: Մարդու կյանքի համար խիստ անհրաժեշտ են Ճ-ի բաղադրության մեջ մտնող բարձր չհագեցածությամբ ճարպաթթուները, որոնք օրգանիզմում հատուկ վիտամինի դեր են կատարում: Ճ. աղիներում լիպազ ֆերմենտի ազդեցությամբ քայքայվում են գլիցերինի և ճարպաթթուների: Գլիցերինը ջրալուծության շնորհիվ ուղղակիորեն անցնում է օրգանիզմ, իսկ ճարպաթթուները ներծծվում են լեղաթթուներով էմուլգացվելուց հետո:

**ՃԱՐՊԵՐ ԿԵՆԴԱՆԱԿԱՆ**, որոշ կենդանիների ճարպահյուսվածքներից կամ կաթից ստացվող բնական նյութեր: Լինում են պինդ և հեղուկ: Պինդ ճարպերը պարունակվում են ցամաքային կենդանիների, հեղուկները՝ ձկների, ծովային կաթնասունների հյուսվածքներում, ինչպես նաև ցամաքային կենդանիների ոսկորներում և կճղակներում: Պինդ Ճ. կ-ին բնորոշ է հագեցած, հեղուկներին՝ չհագեցած ճարպաթթուների (մինչև 4,5 և 6 կրկնակի կապ) բարձր պարունակությունը: Առանձնահատուկ նշանակություն ունի կաթնաճարպը (կաթնայուղ), որը կազմում է կովի կաթի 2,7—6,0%-ը, կարագի 81—82,5%-ը, յուղի 98%-ը: Բնական ճարպերը եռգլիցերիդներից բացի պարունակում են նաև ազատ ճարպաթթուներ (կաթնաճարպը՝ մինչև 20, Ճ. կ.՝ 5—7, *ձեթերը*՝ 5—8 տեսակ), խոլեսթերին, լեցիտին, լիպոքրոմներ (կարոտին, քսանտոֆիլ), վիտամիններ ևն: Տավարի, ոչխարի, խոզի ճարպերը հիմնականում օգտագործվում են որպես սննդամթերք: Վիտամիններով (մասնավորապես A-ով) հարուստ ճարպերը գործածվում են որոշ հիվանդությունների բուժման և կանխարգելման նպատակով: Տեխ. ճարպերը (ձկների, ծովային կաթնասունների ևն) կիրառվում են թեթև և քիմ. արդյունաբերության մեջ (կաշվի մշակման, օծանելիքի, լվացող միջոցների, քսուքների ևն ստացման համար): Որպես սննդամթերք օգտագործվող հեղուկ ճարպերը նախապես մշակվում և հոտազրկվում են: Բեղավոր կետերի ճարպերից ստացվում է մարգարին (տես *Ճարպերի հիդրում*): Տես նաև *Ձկան յուղ*:

**ՃԱՐՊԵՐԻ ՀԻԴՐՈՒՄ**, ջրածնի կատալիտիկ միացումը հեղուկ ճարպերին և *ձեթերին*: Ճ. հ-ման մեթոդն առաջարկել են Նորմանը և Ս. Ա. Ֆոկինը (1902—03): Առաջին անգամ արտադրության մեջ կիրառվել է Ռուսաստանում (1908): Ձեթերի և ծովային կենդանիների ու ձկների հեղուկ ճարպերի (տես *Ճարպեր կենդանական*) հիդրմամբ ստացվում են պինդ ճարպեր, որոնք օգտագործվում են սննդի մեջ (մարգարինի, խոհարարական ճարպերի արտադրություն) և տեխ. նպատակներով (օճառի, ստեարինի ու մեկուսիչ նյութերի արտադրություն): Հիդրման պրոցեսում չհագեցած միացությունները հագենում և մասամբ իզոմերվում են: Հիդրված ճարպերի հատկությունները կախված են հիդրման ջերմաստիճանից ու ճնշումից, կատալիզատորի քանակից ու տեսակից, օգտագործվող ջրածնի քանակից ու որակից: Սննդաճարպեր ստանալու համար հիդրումն (տարածված եղանակը) իրականացնում են ոչ մեծ ավելցուկային ճնշման տակ, արդյունավետ խառնիչներով հարմարեցված ավտոկլավներում մանրահատիկ նիկելային կամ պղինձնիկելային կատալիզատորների ներկայությամբ:

**ՃԱՐՊՈՆ**, ընդերային *որովայնամզի* ածանցյալ, որի թերթիկների արանքում գտնվում է փուխր շարակցական հյուսվածքը, հարուստ ճարպային հյուսվածքով և անոթներով: Մ ե ծ Ճ. կազմված է որովայնամզի 4 թերթիկներից, սկսվում է ստամոքսի մեծ կորությունից, ամրանում լայնական հաստ աղիքին և գոգնոցի նման ծածկելով աղիքները առջևից, իջնում է վար: Կատարում է պաշտպանական ֆունկցիա որովայնի խոռոչի օրգանների վնասվածքների և բորբոքային պրոցեսների դեպքում: Փ ո ք ր Ճ. կազմված է որովայնամզի զույգ թերթիկներից, ձգվում է լյարդի, 12-մատնյա աղիքի վերին հատվածի և ստամոքսի փոքր կորության միջև: Մեծ Ճ. հաճախ օգտագործում են ստամոքսի, աղիքների վիրահատության ժամանակ կարերը ծածկելու, ինչպես նաև լյարդի ու փայծաղի վերքերը փակելու (տամպոնադա) համար:

**ՃԱՐՊՈՒՌՈՒՑՔ**, լ ի պ ո մ ա, ճարպային հյուսվածքի բարորակ ուռուցք: Լինում է ընկույզի մեծությունից մինչև հասուն մարդու գլխի չափ և ավելի: Ունի բարակ պատիճ, շարժուն է, բնականոն հյուսվածքներից սահմանազատված, վիրահատելիս հեշտ է պատիճահանվում: Առավել հաճախ նկատվում է թիկունքի, պարանոցի և որովայնի առաջային պատի ենթամաշկային ճարպաշերտում, հազվադեպ՝ ստամոքսում, հաստ աղիքում, լյարդում: Ճ., որպես կանոն, օրգանիզմի ֆունկցիաների խանգարում չի առաջացնում, վնասվելիս երբեմն թարախակալվում է: Բ ու ժ ու մ ը. վիրաբուժական միջամտություն՝ ուռուցքի հյուսվածաբանական հետազոտությամբ:

**ՃԱՐՏԱՍԱՆՈՒԹՅՈՒՆ**, տես *Հռետորություն*:

**ՃԱՐՏԱՐ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտունու շրջանում, շրջկենտրոնից 15 *կմ* հարավ-արևմուտք: Ունի ավելի քան 5 հզ. բնակիչ (1980): Կազմվել է Ղուզե Ճարտար, Ղուզե Կալեր, Գյունե Ճարտար և Գյունե Կալեր գյուղերից: Կոլտնտեսությունն զբաղվում է այգեգործությամբ, անասնապահությամբ, հացահատիկի մշակությամբ: Ճ-ում գործում են խաղողի նախնական վերամշակման 2 գործարան, ալրաղաց, կենցաղսպասարկման օբյեկտներ: Ունի 4 դպրոց (2-ը՝ միջնակարգ), մշակույթի պալատ, 2 կինո, հիվանդանոց, 5 գրադարան, կապի բաժանմունք, 2 մանկապարտեզ: Ճ-ում պահպանվել են վանք (Եղիշեի) և 3 եկեղեցի (XVII—XIX դդ.), մոտակայքում՝ բնակատեղիներ:

**ՃԱՐՏԱՐԱՊԵՏՆԵՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆ ՍՍՀՄ** (1932—55-ին՝ Ս ո վ ե տ ա կ ա ն ճ ա ր տ ա ր ա պ ե տ ն ե ր ի մ ի ու թ յ ու ն), հասարակական ստեղծագործական կազմակերպություն, որ միավորում է ճարտարապետներին: Ստեղծվել է 1932-ին, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1932-ի ապրիլի 23-ի «Գրական-գեղարվեստական կազմակերպությունների վերակառուցման մասին» որոշման հիման վրա: Համագումարները. I-ը՝ 1937-ին, II-ը՝ 1955-ին, III-ը՝ 1961-ին, IV-ը՝ 1965-ին, V-ը՝ 1970-ին, VI-ը՝ 1975-ին, VII-ը՝ 1981-ին: Ճ. մ-յան կանոնադրությունն ընդունվել է 1937-ին, փոփոխվել և լրացվել է 1970-ին և 1975-ին: Ճ. մ-յան նպատակն է նպաստել սովետական ճարտ-յան առաջընթացին, սովետական ճարտարապետների պրոֆեսիոնալ վարպետության կատարելագործմանը, աջակցել նախաձեռնությանն ու նորարարությանը սովետական բազմազգ ճարտարապետությունում: ՍՍՀՄ Ճ. մ-յան կազմում են միութենական հանրապետությունների ճար-

տարապետների միությունները, ինչպես և ինքնավար հանրապետությունների, մարզերի, շրջանների ու քաղաքների տեղական կազմակերպությունները, որոնք ընդգրկում են 13418 անդամ (1976): Տպագիր օրգանը (ՍՍՀՄ Պետշինի քաղաքացիական շինարարության և ճարտ-յան պետական կոմիտեի հետ) «Արխիտեկտուրա ՍՍՍՌ» («Архитектура СССР») ամսագիրն է: Ճ. մ. ղեկավար օրգանը Համամիութենական համագումարն է, գործադիր մարմինները՝ վարչությունն ու քարտուղարությունը: Վարչության տնօրինության տակ է ճարտ. ֆոնդը: ՍՍՀՄ Ճ. մ-յան վարչության ղեկավարներ են եղել Կ. Հալաբյանը (1932—50), Ա. Չեռնիշյովը (1950—55), Պ. Աբրոսիմովը (1955—61), Ա. Վլասովը (1961—62), 1963-ից՝ Գ. Օռլովը: ՍՍՀՄ Ճ. մ. ճարտարապետների միջազգային միության հիմնադիր-անդամն է: Պարգևատրվել է Լենինի շքանշանով (1970): ՍՍՀՄ Ճ. մ-յան բաղկացուցիչ մասն է Հայաստանի ճարտարապետների միությունը (ՀՃՄ): Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի 1932-ի մայիսի 9-ի՝ «Գրական-գեղարվեստական կազմակերպությունների վերակառուցման մասին» որոշման հիման վրա ստեղծվել է Հայաստանի ճարտարապետների միություն կազմակերպող հանձնաժողով՝ Ա. Թամանյան, Ն. Բունիաթյան, Գ. Քոչար (նախագահ), Մ. Մազմանյան (փոխնախագահ), Ա. Աիարոնյան, Ռ. Հակոբյան, Բ. Արազյան, Հ. Մարգարյան, Հ. Մկրտչյան: 1932-ին ՀՃՄ ունեցել է 37 անդամ: 1937-ի հունիսին (5—9) հրավիրվել է I համագումարը (70 անդամ), ընտրվել ՀՃՄ վարչության կազմը՝ Գ. Քոչար (նախագահ), Ն. Բունիաթյան, Ս. Սաֆարյան, Մ. Մազմանյան, Մ. Գրիգորյան, Բ. Արազյան, Հ. Մարգարյան, Ե. Համբարձումյան, Մ. Մխիթարյան: Հետագա համագումարները տեղի են ունեցել. II-ը՝ 1949-ին, III-ը՝ 1955-ին, IV-ը՝ 1959-ին, V-ը՝ 1962-ին, VI-ը՝ 1964-ին, VII-ը՝ 1966-ին, VIII-ը՝ 1969-ին, IX-ը՝ 1974-ին, X-ը՝ 1979-ին: ՀՃՄ վարչության նախագահ կամ առաջին քարտուղար են եղել Գ. Քոչարը (1932—37, հոկտեմբեր), Ե. Համբարձումյանը (1937-ի նոյեմբեր —1941), Ս. Սաֆարյանը (1941—49), Հ. Բաբաջանյանը (1949—55), Հ. Մարգարյանը (1955—62), Վ. Հարությունյանը (1962—74), Ա. Գրիգորյանը (1974-ից): ՀՃՄ վարչության նախագահի տեղակալ կամ քարտուղար են եղել Թ. Թումանյանը, Կ. Հովհաննիսյանը, Ա. Ասատրյանը, Գ. Աղաբաբյանը, Վ. Բեյուրեկյանը, Ծ. Ազատյանը, Ռ. Ալավերդյանը, Ջ. Թորոսյանը, Մ. Միքայելյանը, Լ. Ջորյանը, Է. Արևշատյանը, Լ. Հակոբյանը, Ս. Գուրզադյանը, Հ. Պողոսյանը, Յ. Սողոմոնյանը, Կ. Անանյանը, Լ. Իգիթյանը, Յա. Իսահակյանը, Լ. Հովհաննիսյանը: 1981-ի օգոստոսի տվյալներով ՀՃՄ ունի 533 անդամ:

**ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ**, շենքեր, կառույցներ, ինչպես և դրանց համակարգով մարդու կյանքի ու գործունեության համար գեղեցիկի օրենքներով ու հարմարավետ տարածական միջավայր ստեղծելու արվեստ: Նրա գեղարվեստական կերպարները նշանակալի դեր են խաղում հասարակության հոգևոր կյանքում: Ճ-յան ֆունկցիոնալ, կառուցվածքային և գեղագիտական հատկանիշները (օգտակարություն, ամրություն, գեղեցկություն) փոխկապակցված են: Ճ. կոչված է բավարարելու հասարակության սոցիալ-կենցաղային և գաղափարա-գեղագիտական պահանջմունքները, ստեղծելու նպաստավոր պայմաններ նրա անդամների կենսագործունեության համար: Ճ. դրսևորվում է *արդյունաբերական ճարտարապետության*, գյուղատնտեսական, բնակելի, հասարակական, *պարտեզա-պուրակային արվեստի* և այլ բնագավառներում: Լայն ընդգրկմամբ Ճ. հանդես է գալիս *քաղաքաշինության* ձևով: Ի տարբերություն արվեստի մյուս տեսակների՝ Ճ. երկակի բնույթ ունի: Իր ֆունկցիոնալ կողմով (այս կամ այն նպատակին ծառայող շենք, կառույց) պատկանում է հասարակության նյութական հիմքին, իսկ գեղագիտականով՝ վերնաշենքին: Ֆունկցիոնալ խնդիրների լուծումը սերտորեն շաղկապված է գեղարվեստական ստեղծագործության հետ, որի հատուկ կերպարներով ու արտահայտչամիջոցներով ներգործում է մարդու գիտակցության վրա, արտահայտում գաղափարներ, առաջացնում տրամադրություններ: Ճ. լիարժեք է, երբ նրանում համահնչուն են նրա երկու հիմնական հատկությունները (ընդ որում՝ ֆունկցիոնալը առաջնային է), այսինքն՝ կա բովանդակության և ձևի միասնություն: Հասարակարգերի փոփոխությունները առաջացնում են փոփոխություններ շենքերի տիպերում, դրանց կառուցման եղանակներում, հորինվածքներում և գեղարվեստական արտահայտչամիջոցներում:

Հռիփսիմեի տաճարը (618). կտրվածք, հատակագիծ

Զևսի տաճարը Օլիմպոսում (մ. թ. ա. 468—456). հատակագիծ

Հռոմի պանթեոնը (մոտ 125). կտրվածք, հատակագիծ

Ճ. մշտանորոգ արվեստ է: Նրա զարգացումը պայմանավորված է օգտագործվող շինանյութերով, շինարարական գործի կատարելագործմամբ, գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների արմատավորմամբ, հասարակության կողմից առաջադրված գործնական պահանջներով և իշխող գաղափարների ազդեցությամբ: Ներազդող գործոններ են նաև երկրի բնակլիմայական պայմանները, շինարարական-ճարտարապետական ավանդույթների վրա խարսխված ժողովրդի գեղագիտական ըմբռնումները: Դրանք էլ միևնույն սոցիալ-պատմական պայմաններում ապրող տարբեր ժողովուրդների մոտ ծնել են Ճ-յան ազգային առանձնահատկություններ (ճարտ. առանձին ազգային դպրոցների զարգացման մասին տես պետություններին, ինչպես և ՍՍՀՄ միութենական հանրապետություններին ու մարզերին նվիրված հոդվածների համապատասխան բաժիններում): Ճ-յան մեջ գեղարվեստական կերպար ստեղծելու հիմնական միջոցներն են տարածության կազմակերպումը և *արխիտեկտոնիկան*: Պատմականորեն առաջացած տարբեր ոճերի զարգացման հիմքում ընկել են ճարտ. հորինվածքների ստեղծման և արտահայտչամիջոցների կիրառության գեղարվեստական որոշակի օրինաչափություններ (սիմետրիա և ասիմետրիա, նյուանս և կոնտրաստ, ռիթմական և մետրական կարգեր, համաչափություն և մասշտաբայնություն, լույս ու ստվեր ևն): Ճ-յան մեջ կիրառվում են նաև հարակից արվեստների (քանդակագործություն, որմնանկարչություն, խճանկարչություն ևն) միջոցներ՝ ճարտ-յան ու արվեստների համադրություն (սինթեզ):

Ճարտ. երկը ստեղծվում է կառուցվածքային տարբեր տարրերից (հիմքեր, պատեր, ծածկեր, տանիքներ ևն), որոնցից յուրաքանչյուրն իր դերն է կատարում կառույցում: Դրանք պետք է լինեն ամուր, հուսալի, երկարակյաց ու տեխնիկա-տնտեսական տեսակետից նպատակահարմար: Ժամանակակից Ճ-յան առաջընթացը մեծապես պայմանավորված է գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներով, որոնք խթանում են նախագծման ու կառուցման առաջավոր մեթոդների արմատավորումը, նոր կոնստրուկցիաների



Ստրասբուրի գոթական տաճարը (շինարարությունը սկսվել է մոտ 1277-ին). արևմտյան ճակատը, հատակագիծ

ու շինանյութերի կիրառումը: Սոցիալիստական հասարակության պայմաններում դրանք հնարավորություն են ընձեռում լայնորեն ծավալելու մասսայական շինարարություն՝ էապես նպաստելով աշխատավորության կյանքի և աշխատանքային պայմանների, շրջապատող տարածական միջավայրի բարելավմանն ու արդիականացմանը, Ճ-յան ֆունկցիոնալ ու գեղագիտական խնդիրների նորովի լուծմանը:

Ճ. ծագել է մարդկության ամենավաղ՝ նախնադարյան համայնական հասարակության ժամանակաշրջանում, երբ, կիրառելով շինարվեստի ամենապարզունակ միջոցներ, կառուցվել են տեղի բնակլիմայական պայմաններին ու շինանյութին համապատասխան *բնակարաններ* ու բնակավայրեր (Հայաստանում՝ բերդշեններ), պաշտամունքային կառույցներ (*մենհիրներ*, *դոլմեններ*, *կրոմլեխներ* ևն): Պետության ծագման հետ կազմավորվել է բնակեցման նոր ձևը՝ *քաղաքը* (իր բաղադրիչ մասերով) որպես վարչական, արհեստային արտադրության և առևտրի կենտրոն, խթանելով քաղաքաշինական սկզբունքների ձևավորումը: Ստրկատիրական պետություններում տիրապետող վերնախավի ձեռքում իշխանության ու նյութական միջոցների կենտրոնացումը, մեծաքանակ ստրուկների շահագործումը, գիտության ու տեխնիկայի նվաճումները հնարավոր են դարձրել կառուցելու ռոռգման խոշոր համակարգեր, պաշտպանական հզոր կառույցներ, մոնումենտալ պալատներ, տաճարներ, դամբարաններ, որոնք կոչված էին մեծարելու աստվածների և աստվածացված տիրակալների իշխանության ուժն ու անսասանությունը: Այդպիսիք են եգիպտական բուրգերը (Գիզա) և տաճարները (Կառնակ, Լուքսոր), ասորական, բաբելական զիկկուրատները (տես *Բաբելա-ասուրական մշակույթ*), ուրարտ. (Տուշպա, Արգիշտիխինիլի, Էրեբունի, Թեյշեբաինի) և խեթական պալատական համալիրները, Պերսեպոլիսի սյունազարդ ապադանները, հնդ. ստուպաները, Հին Ամերիկայի բրգաձև տաճարներն ու պալատական համալիրները, Չինական մեծ պարիսպը, որոնց ստեղծման ընթացքում կուտակվել է շինարարական հարուստ փորձ, սկզբնավորվել են շենքերի հորինվածքի ու դրանց անսամբլային կառուցապատման (տես *Անսամբլ*) ճարտարապետա-գեղարվեստական կուռ օրինաչափություններ: Ճ. առավել նըվաճումների է հասել Հին Հունաստանում և Հին Հռոմում: Հին Հունաստանի ստրկատիրական դեմոկրատիայի պայմաններում քաղաքպետությունների (պոլիսների) գոյությունը նպաստել է քաղաքաշինական արվեստի զարգացմանը: Լայն կիրառություն է ստացել կանոնավոր՝ հիպոդամոսյան հատակագծման սկզբունքը՝ փողոցների ուղղանկյուն ցանցով, նրանցով կազմավորված հասարակական (*ագորա*), պաշտամունքային ու ճարտ. հորինվածքային (*ակրոպոլիս*) կենտրոններով: Մշակվել են շինարվեստի զուտ հուն. սկզբունքներ, դասական ճարտ. *օրդերները*: Պոլիսներում հասարակական կյանքի զարգացումը խթանել է հասարակական նոր տիպի շենքերի՝ *թատրոնների*, *ստադիոնների*, *ձիարշավարանների*, *գիմնասիոնների*, բուլևտերիոնների ստեղծմանը:

Հին Հռոմում առաջատար նշանակություն են ստացել այնպիսի կառույցներ, որոնք կոչված էին փառաբանելու հանրապետության, հետագայում՝ կայսրության հզորությունը: Զարկ է տրվել ինժեներական կառույցների՝ ճանապարհների, կամուրջների, ջրանցույցների շինարարությանը: Ստեղծվել է կրաբետոն և կրաշաղախ, կառույցներում կիրառվել են կամարի, թաղի և գմբեթի կոնստրուկցիաները: Անկանոն կառուցապատումով բնորոշ Հռոմ քաղաքում առաջացել են կանոնավոր սկզբունքով կառուցապատված հասարակական կենտրոններ՝ *ֆորումներ*: Կառուցվել են հասարակական նոր տիպի շենքեր՝ *կրկես*, *թատրոն*, *ամֆիթատրոն*, *թերմեր*, *բազիլիկ*: Քաղաքաշինության մեջ (հիմնականում հռոմ. տիրապետության տակ գտնվող երկրներում) կիրառություն են ստացել սյունազարդ փողոցները ու հրապարակները, *հաղթակամարները*: Բնակարանային Ճ-յան մեջ իշխել են բակավոր (ատրիումային) տան տիպը, քաղաքամերձ վիլլաները: Կառուցվել են նաև 5—6 և մինչև 14-հարկանի բնակելի տներ՝ ինսուլաներ:

Ֆեոդալիզմի դարաշրջանում Ճ. ձեռք է բերել նոր հասարակարգին համապատասխանող հատկանիշներ: Ֆեոդալական պատերազմները թելադրել են ստեղծելու պաշտպանական նոր տիպի կառույցներ՝ դղյակներ, բերդեր՝ եվրոպական երկըրներում, Անդրկովկասում, Միջին Ասիայում և այլուր: Այդպիսի կառույցներ են ստեղծվել նաև Հայաստանում, Կիլիկիայի հայկ. պետությունում: Կրոնի գաղափարական ազդեցության տակ զարգացել է պաշտամունքային շենքերի Ճ.: Անտիկ Հռոմի բազիլիկների ու կենտրոնակազմ գմբեթավոր տաճարների ավանդույթների հիման վրա Բյուզանդիայում ստեղծվել են քրիստոնեական տաճարների տիպեր (գլուխգործոցը Ս. Սոֆիայի տաճարն է): Բյուզանդական Ճ. բարերար ազդեցություն է ունեցել սլավոնական երկրների (Բուլղարիա, Սերբիա, Ռուսիա) Ճ-յան վրա և որոշ ընդհանրություններ՝ Վրաստանի և Հայաստանի Ճ-յան հետ:

Զարգացած միջնադարում Արմ. և Կենտրոնական Եվրոպայի երկրներում առաջացել են *ռոմանական ոճը* (X—XI դդ.) և *գոթական ոճը* (XII—XIV դդ.): Ռոմանական ոճը, բացի ծանրանիստ բազիլիկ տաճարներից ու վանքային բակավոր համալիրներից, իր ոլորտն է ընդգրկել պաշտպանական կառուցվածքները (ֆեոդալական դղյակներ) և քաղաքային աշխարհիկ շենքերը (քաղաքապետարաններ, 1-ին հարկում արհեստանոցներով ու խանութներով 2—3-հարկանի բնակելի տներ): Գոթական ոճը նշանավորվել է ծավալատարածական հորինվածքի և կոնստրուկտիվ համակարգի սկզբունքորեն նոր լուծումներով, շինարվեստի բացառիկ կատարելագործմամբ: Ռոմանական Ճ-յան զանգվածեղ կոնստրուկցիաները փոխարինվել են ինժեներական տեսակետից իմաստավորված հիմնակմախքային համակարգով և այլ կոնստրուկցիաներով (*ջլաղեղներ*, *կոնտրֆորսներ*, *արկբուտաններ*): Տա-

Սուլթան Հասանի մզկիթը (1356—63) Կահիրեում. կտրվածք, հատակագիծ






Սանտա Մարիա դելլե Գրացիե եկեղեցին Միլանում (1492—97, ճարտ. Դ. Բրամանտե). կտրվածք, հատակագիծ

ճարներին (հիմնականում բազիլիկատիպ) հատուկ է շեշտված վերասլացությունը, ընդարձակ, առատորեն լուսավորված ներքին տարածությունը: Կազմավորվելով Ֆրանսիայում (Փարիզի Աստվածամոր, Շարտրի, Ռեյմսի, Ամիենի տաճարներ)՝ գոթական ոճը լայն տարածում է գտել Գերմանիայում, Իտալիայում, Անգլիայում, Իսպանիայում, Լեհաստանում, Չեխոսլովակիայում, Մերձբալթյան երկրներում և այլուր:

Ֆեոդալիզմի դարաշրջանի Ռուսաստանի Ճ., կազմավորվելով Կիևյան Ռուսիայի կենտրոններում (Կիևի և Նովգորոդի Ս. Սոֆիայի տաճարներ), բարձր նվաճումների է հասել ռուս. հողերը Մոսկվայի իշխանության տակ միավորելուց հետո (Կրեմլի անսամբլը, Վասիլի Երանելու և Ֆիլիի տաճարները Մոսկվայում, Համբարձման տաճարը Կոլոմենսկոյե գյուղում են):

Հայկ. Ճ-յան սկզբունքները կազմավորվել են պատմական երկարատև ժամանակաշրջանում (նախնադարյան համայնական և ստրկատիրական հասարակարգերում) և ձևավորվել նախաքրիստոնեական շրջանում, կրելով տեղական (ուրարտ.) և անտիկ (հունա-հելլենիստական, հռոմ.) ճարտ. մշակույթների ազդեցությունը: Ֆեոդալիզմի դարաշրջանում հայկ. Ճ. նշանավորվել է ազգային նկարագրի բյուրեղացումով, ստեղծագործական խոշոր նվաճումներով ու զարգացման կուռ հաջորդականությամբ: Վաղ միջնադարում (IV—VII դդ.) ստեղծվել են եկեղեցական շենքերի հատակագծային և ծավալատարածական բազմապիսի հորինվածքներ: Միջնադարում (IX—XI դդ.) զարգացման բարձըր մակարդակի է հասել քաղաքաշինական արվեստը (Անի, Դվին, Կարս, Վան են), ստեղծվել են վանքային համալիրներ (Տաթև, Սևան, Գնդեվանք, Հոռոմոս, Խըծկոնք, Հաղպատ, Սանահին են): Զարգացած միջնադարում (XII—XIV դդ.) առավելապես կատարելագործվել է քաղաքաշինական արվեստը, հարստացել են ազգային արտահայտչամիջոցները, շինարարական-կոնստրուկտիվ հնարանքները, առաջատար նշանակություն են ստացել աշխարհիկ շենքերը (գրատներ, սեղանատներ, հյուրատներ, կարավանատներ), ինժեներական (կամուրջներ, ամբարտակներ) և պաշտպանական կառույցները: Ուշ միջնադարի (XVII—XIX դդ.) հայկ. Ճ., հենվելով միջնադարի ավանդույթների վրա, հանդես է բերել նոր հատկանիշներ քաղաքաշինության ու բնակարանային Ճ-յան ասպարեզներում:

Վրաստանում Ճ. կազմավորվել և զարգացել է Հայաստանին համանման սոցիալ-պատմական ու բնակլիմայական պայմաններում: Ստրկատիրական շրջանի Ճ. բնորոշվում է հունա-հռոմեականի ազդեցությամբ (Բագինեթի, Վանի, Արմազի, Ուփլիս-ցիխե): Վաղ միջնադարում ստեղծվել են բազիլիկ (Բոլնիսի Սիոն) և գմբեթավոր (Ջվարի, Ցրոմի, Սամծևրիսի) եկեղեցիների տիպեր: Միջնադարյան Վրաստանի կոթողներ են՝ Բագրատի (Քութայիսում), Սվետիցխովելի (Մցխեթում) և Ալավերդու (Կախեթում) XI դ. մայր տաճարները, Գեգուտիի պալատը (XII դ.), Վարձիայի ժայռափոր համալիրը (XIII դ.), Գելաթի վանքը (XII—XIII դ.) են:

Ֆեոդալիզմի շրջանի Ճ-յան զարգացման մեջ զգալի ներդրում են ունեցել արաբ. Արևելքի ժողովուրդները (տես *Արաբական մշակույթ*): Միջին Ասիայի քաղաքներում, հիմնականում հում և թրծված աղյուսից կառուցվել են դամբարանային և առևտրական շենքերի համալիրներ, գըմբեթավոր դամբարաններ ու մզկիթներ, մեդրեսեներ: Ադրբեջանի Ճ. նշանավորվել է Շիրվանշահերի պալատական համալիրով (Բաքվում), Նախիջևանի թյուրբե-դամբարաններով, Ապշերոնի թերակղզու պաշտպանական կառույցներով: Շենքերի բազմատիպության և Ճ-յան առանձնահատկության ուշագրավ օրինակներ են տվել Հնդկաստանը, Չինաստանը, Ինդոնեզիան, Բիրման են:

Ճ-յան զարգացման կարևոր փուլ եղավ *Վերածննդի* դարաշրջանը: Իտալիայում միջնադարյան սխոլաստիկայի դեմ ուղղված ու մարդասիրությամբ տոգորված նոր գաղափարների հենարանն են եղել անտիկ ավանդույթներն ու գեղագիտական իդեալները, որոնք նոր պայմաններում կերպարանափոխվել ու սկզբունքորեն նոր մեկնաբանություններով են կիրառվել հասարակական շենքերի, պալատ-մենատների (պալացցո), քաղաքամերձ վիլլաների և ներդաշնակության սկզբունքներով կազմավորված քաղաքային անսամբլների (Ֆլորենցիա, Հռոմ, Վիչենցա են) Ճ-յան մեջ: Ստեղծագործել են լայն զարգացման տեր ու բազմաշնորհ արվեստագետներ Ֆ. Բրունելլեսկին, Լ. Բ. Ալբերտին, Միկելոցցոն, Բրամանտեն, Միքելանջելոն, Վինյոլան, Պալլադիոն և ուրիշներ: Իտալ. վերածնության Ճ-յան ազդեցությունը տարածվել է Եվրոպայի երկրներում՝ արտահայտվելով տեղական առանձնահատկություններ: XVI դ. 2-րդ կեսին կազմավորվել է *բարոկկոյի* Ճ.: Վերածննդի հումանիստական գաղափարները կաշկանդվել են: Պարզ ու տրամաբանական ճարտ. հորինվածքներն ու ձևերը փոխարինվել են թատերականացված ու հանդիսավոր, եկեղեցական և աշխարհիկ ծեսերի պահանջներին համապատասխանող, տարածական ձևերի անհարկի բարդությամբ ու պլաստիկությամբ, դեկորատիվ միջոցների շռայլ կիրառությամբ աչքի ընկնող շենքերով: Բարոկկո ոճը XVII դ. տարածում է գտել Եվրոպայի մի քանի երկրներում (Գերմանիա, Ավստրիա, Չեխոսլովակիա, Լեհաստան), ինչպես և Ռուսաստանում: Միապետության հաղթանակի, քաղաքային կյանքի, արդյունաբերության և առևտրի զարգացման պայմաններում XVII դ. Ֆրանսիայում ձևավորվել է *կլասիցիզմի* Ճ.: Նրա հիմքում ընկած բանական մտածողությունը թելադրել է երկրաչափական խիստ ձևեր, հավասարակշռված ու հանդիսավոր հորինվածքներ: Դասական օրդերների համակարգը ստացել է դեկորատիվ կիրառություն: Հորին-



Վերսալի պալատապուրակային համալիրը (1668—89, ճարտ-ներ՝ Ժ. Արդուեն-Մանսար, Ա. Լենոտր). հատակագիծ



Ս. Պետրոսի հրապարակը Հռոմում (1657—63, ճարտ. Լ. Բեռնինի)

վածքների կանոնավորության ու հավասարակշռության սկզբունքը տարածվել է քաղաքային հրապարակների, պուրակների, պալատա-պուրակային համալիրների վրա (Թյուիլրիի ու Լուվրի պալատները Փարիզում, Վերսալի պալատա-պուրակային համալիրը, ճարտ-ներ՝ Լ. Լևո, Ա. Լենոտր, Ժ. Արդուեն-Մանսար): Ֆրանս. կլասիցիզմի Ճ. իր արձագանքներն է ունեցել եվրոպական երկրներում, այդ թվում նաև Ռուսաստանում, որտեղ հանդես է եկել ճարտարապետ վարպետների մի տաղանդավոր սերունդ (Ա. Զախարով, Մ. Կազակով, Լ. Ստասով, Ա. Վորոնիխին, Վ. Բաժենով, Վ. Ռաստրելլի, Կ. Ռոսսի և ուրիշներ), որոնք XVIII—XIX դդ. ստեղծել են Պետերբուրգի ճարտ. անսամբլները, Ձմեռային պալատը, բազմաթիվ այլ շենքեր, քաղաքամերձ Պետերգոֆը, Պավլովսկի և պալատա-պուրակային այլ համալիրներ: XIX դ. կեսից կլասիցիզմի ոճն ամենուրեք անկում է ապրել: Կապիտալիզմի վերելքը Եվրոպայում և ԱՄՆ-ում, նույն դարի 2-րդ կեսից արդյունաբերության զարգացումը պայմանավորել են քաղաքների արագ աճ, արտադրական, առևտրա-ֆինանսական և տրանսպորտային բազմազան շենքերի (գործարանների, շուկաների, հանրախանութների, բանկերի, բորսաների, ցուցահանդեսային տաղավարների, կայարանների) առաջացում: Շինարարական նոր նյութերը (մետաղ, ապակի, բետոն), ստանդարտացումը, շինարարական աշխատանքների մեքենայացումը և նոր կոնստրուկցիաների կիրառումը հնարավոր են դարձրել կատարելագործելու շենքերի ֆունկցիոնալ, տեխ. ու գեղարվեստական մակարդակը: Մետաղական կոնստրուկցիաներով են կառուցվել Լոնդոնի «Բյուրեղապակյա պալատը» և Փարիզի Էյֆելյան աշտարակը: Ամերիկյան քաղաքներում կառուցվել են «երկնաքերներ»: Մենատների հետ միաժամանակ զարկ է տրվել «եկամտաբեր»



Կազանյան տաճարը Լենինգրադում (1801—1811, ճարտ. Ա. Ն. Վորոնիխին). կտրվածք, հատակագիծ



Գուգենհայմի թանգարանը Նյու Յորքում (1956—59, ճարտ. Ֆ. Լ. Ռայթ). կտրվածք

(վարձով տրվող) տների շինարարությունը: Կապիտալիզմի պայմաններում, դադարելով կրել առաջադեմ գաղափարներ, Ճ. սկսել է անկում ապրել: Լայն տարածում են գտել էկլեկտիզմը, 1890-ական թթ.՝ «*մոդեռն*» ոճը: XX դ. սկզբից փորձեր են արվել նոր տեխնիկայի նվաճումները համադրելու դասական հորինվածքների հետ (Ֆրանսիայում՝ Օ. Պեռե, Ավստրիայում՝



Վիլնյուսի Ժիրմունայ բնակելի շրջանը (№ 18 միկրոշրջան, 1968, ճարտ-ներ՝ Բ. Կասպերավիչենե, Բ. Կրուժինիս, ինժեներներ՝ Վ. Ջուբրուս, Շ. Լյուրեցկիս). հատակագիծ

Օ. Վագներ), ինչպես նաև՝ վերածնելու դասականը (Ռուսաստանում՝ Ի. Ֆոմին, Ա. Շչուսև, Ա. Թամանյան, Ի. Ժոլտովսկի, Անգլիայում՝ Է. Լաչենս, ԱՄՆ-ում՝ Հ. Բեկոն): Արտահայտելով կապիտալիստական հասարակության իրավիճակը՝ հետագա տարիներին Ճ. դարձել է ավելի հակասական և ուղիներ որոնել այդ վիճակից դուրս գալու համար: Գոյություն ունեցող իրարամերժ ուղղությունների մեջ առաջադիմական էին ռացիոնալիստները. Ֆրանսիայում՝ Լը Կորբյուզիեն, Գերմանիայում՝ «Բաուհաուզ» դպրոցի հիմնադիրներ Վ. Գրոպիուսը, Հ. Մեյերը, Լ. Միս վան դեր Ռոեն, Նիդերլանդներում՝ Յո. Աուդը, որոնք արտահայտչամիջոցները որոնել են պարզության, ձևերի հակադրության մեջ, կարևոր նշանակություն տվել շենքի կոնստրուկտիվ-տեխնիկական կառուցվածքին, ֆունկցիոնալ կազմակերպմանը (տես *Ռացիոնալիզմ*, *Ֆունկցիոնալիզմ*): 1930-ական թթ. ֆունկցիոնալիզմը լայն տարածում է գտել կապիտալիստական երկրներում: Երկրորդ համաշխարհային պատերազմից առաջ Ճ-յան մեջ հաստատվել է *նեոկլասիցիզմը*: Ֆունկցիոնալիզմին հակադրվել է *օրգանական ճարտարապետությունը* (հիմնադիր՝ Ֆ. Լ. Ռայթ, ԱՄՆ): Պատերազմից հետո նկատվել է ձգտում ռացիոնալիզմը համապատասխանեցնելու տեղի պայմաններին, ավանդույթներին: Դրա հաջողված փորձերն են Է. Սաարինենի, Ա. Աալտոյի (Ֆինլանդիա), Կ. Տանգեի (Ճապոնիա), Ֆ. Կանդելայի (Մեքսիկա) ստեղծագործությունները: Իր կոսմոպոլիտական ունիվերսալիզմով օրգ. ճարտ-յանը հակադրվել է Լ. Միս վան դեր Ռոեն: Կապիտալիստական հասարակության ներսում եղած հակասությունները ծնել են նաև այլ ուղղություններ:

Սոցիալիստական հասարակարգում Ճ. ծառայում է ամբողջ ժողովրդի նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարմանը: 1920-ական թթ. ՍՍՀՄ-ում ստեղծվել են հասարակության սոցիալական նոր պահանջմունքները բավարարող շենքերի՝ տուն-կոմունաների, մշակույթի պալատների, բանվորական ակումբների, մանկապարտեզների ու մանկամսուրների տիպեր: Ճարտ. զարգացման, նոր սոցիալիստական ուղիների որոնման են ձգտել պրոֆեսիոնալ տարբեր խմբավորումների շուրջ համախմբված ճարտ-ները՝ կոնստրուկտիվիստներ Վեսնին եղբայրները, Մ. Գինզբուրգը, Կ. Հալաբյանը, Գ. Քոչարը, Մ. Մազմանյանը, ռացիոնալիստներ Կ. Մելնիկովը, Ն. Լադովսկին և դասական ավանդույթների շարունակման կողմնակիցներ Ա. Շչուսևը, Ի. Ժոլտովսկին, Ա. Թամանյանը, որոնք 1930-ական թթ. միավորվել են ՍՍՀՄ ճարտ. միության մեջ: Քաղաքաշինական սկզբունքներն նոր, սոցիալիստական գաղափարները մարմնավորում են ստացել Մոսկվայի (1935), Լենինգրադի (1935—40), Երևանի (1924, 1939) գլխավոր հատակագծերում: Ծավալվել է վարչական (Երևանում՝ Հայկ. ՍՍՀ Կառավարական տուն, Ա. Թամանյան), հասարակական, կուլտուր-կենցաղային (Երևանում՝ Ժող. տունը, Ա. Թամանյան), տրանսպորտային և առողջարանային շենքերի շինարարություն, շարք են մտել Մոսկվայի մետրոպոլիտենի առաջին հերթը, Մոսկվա-Վոլգա ջրանցքը, ստեղծվել է Մոսկվայի համամիութենական գյուղատնտ. ցուցահանդեսի համալիրը ևն: Հայրենական մեծ պատերազմից հետո խոշորամասշտաբ աշխատանքներ են ծավալվել ավերված քաղաքների ու բնակավայրերի վերականգնման ուղղությամբ (Վոլգոգրադ, Կիև, Մինսկ ևն): 1950-ական թթ. 2-րդ կեսից սովետական Ճ. ապրում է ստեղծագործական վերակառուցման փուլ: Աշխատավորության բնակարանային պայմանների բարելավումն արագացնելու նպատակով ծավալված մասսայական բնակարանային շինարարության սկզբնական շրջանի թերությունները (միօրինակություն, ցածր գեղագիտական մակարդակի, տեղային առանձնահատկությունների անտեսում) հաղթահարվել են: Նախագծման և կառուցման առաջավոր մեթոդները հնարավորություն են ընձեռել ստեղծելու պարզ ու արտահայտիչ, հատակագծային ու ծավալատարածական ազատ լուծումներ, շրջապատին ներդաշնակ հորինվածքներ: Այժմ նկատելի են արդիականը ավանդականի հետ զուգակցելու, ազգային առանձնահատկությունները պահպանելու ուղղությամբ կատարվող դրական փորձեր: Որոշակի հաջողություններ են ձեռք բերվել արդ. շենքերի, գյուղատնտ. համալիրների և հիդրոտեխնիկական կառույցների Ճ-յան բնագավառում:

Նոր հասարակարգի բովանդակությունը ճարտ. միջոցներով արտահայտելու խնդրի լուծման ուղղությամբ որոշակի դրական արդյունքների են հասել՝ Չե-

խոսլովակիայում, Բուլղարիայում, Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունում, Լեհաստանում, Հունգարիայում, Ռումինիայում:

Պատկերազարդումը տես 6-րդ հատորի 704—705-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակներ XXXI—XXXII:

*Գրկ.* Ակնարկ հայ ճարտարապետության պատմության, Ե., 1964: Հարությունյան Վ., Հին աշխարհի ճարտարապետություն, Ե., 1978: Զարյան Ա., Արևմտյան Եվրոպայի արդի ճարտարապետությունը, Ե., 1979: Всеобщая история архитектуры, т. 1—2, М., 1944—49; т. 3—12, М., 1966—77; Всеобщая история искусств, т. 1—6, М., 1956—66; Журавлев А. М., Хан-Магомедов С. О., Советская архитектура, М., 1968; Шуази О., История архитектуры, пер. с франц., т. 1—2, М., 1935—37; Витрувий, Десять книг об архитектуре, пер. с итал., М., 1936 (1938); Палладио А., Четыре книги об архитектуре, [пер. с итал.], 2 изд., М., 1938; Виньола Дж. Б., Правила пяти ордеров архитектуры, пер. [с итал.], М., 1939; Едике Ю., История современной архитектуры, М., 1972.

*Վ. Հարությունյան*

**ՃԳՆԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ**, կրոնական մղումով հասարակությունից, ընտանիքից և ընդհանրապես մարդկանցից հեռանալը, ճգնակեցությունը (*ասկետիզմ*) ամայի և անմարդաբնակ վայրում: Հատուկ է եղել հինարևելյան կրոններին (բրահմայականություն, բուդդայականություն, հուդայականություն ևն): Քրիստոնեության մեջ հրևան է եկել III դ. (Եգիպտոսի անապատներում), կրոնական ջերմեռանդությունից բացի եղել նաև հռոմ. հալածանքներից փախուստի միջոց: Առաջին քրիստոնյա ճգնավորները (նշանավոր են Պողոս Թեբեացին և Անտոնիոս Մեծը) ինքնազրկմամբ և մարմնական տառապանքով ձգտել են բարոյական մաքրության, կարծելով, թե իրենց օրինակով մարդկությունը կձերբազատվի սոցիալական անհավասարության չարիքից: IV դ. Ճ. տարածում է ստացել նաև Պաղեստինում, Կապադովկիայում, Հայաստանում, ավելի ուշ՝ Եվրոպայում (Գալիա, Իսպանիա, Իտալիա): Պաշտոնական եկեղեցին խրախուսել է Ճ., միաժամանակ ձգտելով անհատ ճգնավորներին համախմբել եկեղեցու իրավասության տակ գտնվող մենաստաններում: Միջին դարերում Ճ. աստիճանաբար կուլ է գնացել վանականությանը (տես *Վանականություն*):

*Գրկ.* Հուսիկ եպիսկոպոս, Անապատականներ և վանականութիւն, Վաղ-պատ, 1906:

**ՃԵՂՔԱՅՆՈՒԹՅՈՒՆ**, իմպուլսային տեխնիկայում՝ իմպուլսների հաջորդման պարբերության և առանձին *իմպուլսի* տևողության հարաբերությունը: Ռադիո- և օպտիկական լոկացիայում բնութագրում է չափման ճշգրտությունը և զգայնությունը. որքան փոքր է Ճ., այնքան մեծ է լոկատորի գործողության շառավիղը և ծախսվող միջին հզորությունը, սակայն փոքր է ճըշգրտությունը: Ռեկորդային է օպտիկական լոկացիայի ճշգրտությունը, քանի որ ստացվող լազերային իմպուլսների տևողությունը հասնում է $10^{-12}$ *վրկ*-ի: Կապի իմպուլսային համակարգերում Ճ. բնութագրում է ժամանակային խտացմամբ կապի բազմականալ համակարգի հնարավոր կանալների թիվը:

**ՃԵՂՔՎԱԾՔԱՅԻՆ ԺԱՅԹՔՈՒՄՆԵՐ**, ժայթքումներ, որոնք տեղի են ունենում ուժեղ երկրաշարժից բացվող ճեղքի երկարությամբ: Ճ. ժ-ի ժամանակ հրաբխային գործունեությունը հաճախ կենտրոնանում է ճեղքի առանձին հատվածներում՝ առաջացնելով մի ամբողջ շարք փոքր *հրաբուխներ*: Սովորաբար ճեղքի կենտրոնական մասից կատարվում է լավային զանգվածային ժայթքումը, եզրերից՝ ուժեղ էքսպլոզիաներ (պայթյուններ), իսկ միջանկյալ գոնայում դիտվում են շլակային նստվածքներ: Հետագայում ժայթքումները կուտակվում են ճեղքի որևէ տեղամասում, առաջացնելով կենտրոնական հրաբուխը: Սովորաբար ճեղքը առաջին և միակ ժայթքումից հետո փակվում է, և հաջորդ ժայթքումը կատարվում է նոր գոյացած ճեղքից: Ճ. ժ-ի հայտնի օրինակ է Լակիի ժայթքումը Իսլանդիայում:

**ՃԵՄԱԼՏԻՆ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Խլաթի գավառում: 1909-ին ուներ 153 (15 ընտանիք) հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Ճ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին:

**ՃԵՄԱՐԱՆ**, սկզբնապես *ակադեմիա* բառի հայերեն համարժեքը: Այդ անվամբ կոչվել են նաև որոշ բարձր տիպի դպրոցներ, ուսումնագիտական կենտրոններ: Հին Հունաստանում ակադեմիա էր կոչվում Պլատոնի հիմնած փիլ. դպրոցը Աթենքի մոտ, դիցաբանական հերոս Ակադեմոսի անունը կրող պարտեզում: Հետագայում նրա աշակերտ Արիստոտելը իր հիմնած դպրոցում դասախոսություններ էր կարդում՝ աշակերտների հետ ճեմելով: Այստեղից և Ճ. անվանումը: Հայ դպրոցի պատմության մեջ Ճ. են անվանել Գրիգոր Մագիստրոսի արտաքին ու ներքին գիտություններ ուսուցանող դպրոցները Անիում, Բջնիում, Սանահինում (XI դ.): Ճ. է կոչվել նաև Ղրիմի Ս. Խաչ վանքի դպրոցը (XIV—XVII դդ.), ավելի ուշ՝ մի շարք խոշոր կրթական կենտրոններ՝ Մոսկվայի Լազարյան ճեմարանը (1814—1918), Կ. Պոլսի Սկյուտարի ճեմարանը (1838-ից), Էջմիածնի Գևորգյան ճեմարանը (1874—1917), Այնթապի Կիլիկյան ճեմարանը (1912—15), Մարաշի ճեմարանը (1891—1915) ևն: Այժմ Ճ. անվան տակ գործում են Էջմիածնի հոգևոր ճեմարանը (1945-ից), Սոֆիայի հայ գաղութի Մեսրոպյան ճեմարանը (1921-ից), Բեյրութի Նշան-Փալանջյան ճեմարանը (1929-ից), Հալեպի Կիլիկյան ճեմարանը (1960-ից) ևն:

*Ա. Իգնատյան*

**ՃԵՆԱԿԱՎ**, ճենահող, տես *Կաոլին*:

**ՃԵՆԱՊԱԿԻ**, խեցեգործական նուրբ արտադրանք, սովորաբար ունի առանց ծակոտիների, սպիտակ, գունձավորված, բարակ շերտում լուսաթափանց, ջրի և գազի համար անթափանց թրծազանգված: Օժտված է բարձր էլեկտրամեկուսիչ հատկություններով ու մեխանիկական ամրությամբ, ջերմա- և քիմ. կայունությամբ: Օգտագործվում է քիմ., էլեկտրա- և ռադիոտեխնիկական արդյունաբերության մեջ (լաբորատոր ամանեղեն, խողովակներ, մեկուսիչ նյութեր ևն): Պատրաստում են կավի, սպիտակ ճենակավի (*կաոլին*), դաշտային սպաթի, քվարցի և ճենապակյա ջարդվածքի խառնուրդից, թրծման բարձր ջերմաստիճանի պայմաններում: Գոյություն ունեն, այսպես կոչված, կարծր և փափուկ Ճ-ներ: Կարծրը պարունակում է 45—60% կավ, քվարց, դաշտային սպաթ և ոչ մեծ քանակությամբ կրածին օքսիդ (թրծման ջերմաստիճանը՝ մինչև 1450°), փափուկը քիմ. բաղադրությամբ ավելի բազմազան է, ունի ցածր կարծրություն, մեխանիկական ամրություն (թրծման ջերմաստիճանը՝ մինչև 1300°) և հիմնականում օգտագործվում է գեղարվեստական իրերի արտադրությունում, տարատեսակներից է առավել ճերմակ ու թափանցիկ ոսկրային Ճ. (պարունակում է մինչև 50% ոսկրամոխիր): Ճ-ու երկու տեսակներն էլ ծածկվում են *ջնարակով*, լինում է երբեմն առանց ջնարակի (բիսկվիտ): Ճ-ու զանգվածի մշակումը բարդ է (տես *Խեցեգործություն*):

*Գ. Սրվանձտյան*

**Գեղարվեստական ճենապակի**: Պատմական ակնարկ: Ճ-ու առաջին իրերը երևան են եկել Չինաստանում, IV—VI դդ.: Հայտնի են դեռևս «Թան» ժամանակաշրջանից (618—907) կլորավուն ձևերով, նկարազարդված և գունավոր ջնարակված, «Սուն» ժամանակաշրջանից (960—1279)՝ միագույն, «Մին» ժամանակաշրջանից (1368—1644, հիմնական արտադրավայրը՝ Ցզենդեչժեն)՝ բազմագույն, բնապատկերներով և կենցաղային կոմպոզիցիաներով զարդարված սկահակներ, սափորներ, XVII—XVIII դդ., Ցզենդեչժենի վառարանների կատարելագործման հետևանքով՝ հարթ, սև, փայլուն, նաև շողշողուն արծնապակիով նկարազարդված («Կանաչ ընտանիք», «Վարդագույն ընտանիք») անոթներ: VII—XIII դդ. չինական Ճ. լայնորեն տարածվեց Ասիայի և Եվրոպայի երկրներում: Կորեայում Ճ. հայտնաբերվեց X դ. (հարթ, երբեմն կարմիր գույնով, ոսկով նկարազարդված իրեր), Ճապոնիայում՝ XVI դ. (ճանաչված էր Արիտա քաղաքի արտադրանքը): Մոտ 1709-ին գերմանացի գյուտարար Ի. Ֆ. Բյոգտերը (Է. Վ. Չիրնհաուզի համագործակցությամբ) հայտնաբերեց կարծըր Ճ. արտադրելու եղանակը: 1710-ին Մայսենում հիմնադրվեց Եվրոպայում առաջին Ճ-ու գործարանը (ռոկոկո, հետագայում՝ կլասիցիզմի ոճով սպասքներ, քանդակներ, ամանեղեն): XVIII դ. գործարաններ բացվեցին Վիեննայում (1717), Բեռլինում (1753), Ֆյուրստենբուրգում (1753) և այլուր (խոշորագույն վարպետներից էին Ֆ. Ա. Բուստելլին, Ի. Պ. Մելխիորը): XVII դ. 2-րդ կեսին ֆրանսիացի բրուտագործները ստացել էին արհեստական Ճ., որը չէր դիմանում բարձր ջերմաստիճանի թրծմանը և ստացավ փափուկ Ճ. անվանումը: Փափուկ Ճ-ու մանուֆակտուրաներ հիմնադրվեցին Ռուանում (1673), Սեն-Կլուում (1677), Շանտիյիում (1725), Մենեսիում (1735), այնուհետև՝ խոշոր ձեռնարկություն Վենսեննում (կոմս Օրրի դը Ֆյուլվիի հովանավորությամբ), որը 1753-ին վերակառուցվեց Արքայականի, իսկ 1756-ին տեղափոխվեց Սևր, որտեղ 1772-ից սկսեցին արտադրել կարծր

Ճ.: Չեռնարկությունը թողարկում էր ամանեղեն, սպասքներ, սկահակներ (վաղ նմուշները կրում են արլ. և մայսենյան Ճ-ու կնիքը), նաև բիսկվիտից արձանիկներ քանդակագործներ Վան դը Վորստի, Բլոնդոի, Ֆալկոնեի մոդելներով, Բուշեի և այլ արվեստագետների էսքիզներով: 1740-ական թթ. Անգլիայում սկսեցին արտադրել փափուկ Ճ. և նրա տարատեսակը՝ ոսկրե Ճ. (նշանավոր էին Բաուի, Չելսիի, Վուսթերի մանուֆակտուրաների արտադրած ամանեղենը, հարդարանքի բազմազան առարկաները՝ ծաղիկների, թռչունների նախշազարդերով): Կարծր Ճ-ու առաջին գործարանը հիմնադրվեց Պլիմուտում (մոտ 1760-ական թթ.), որը 1781-ին տեղափոխվեց Շելտոն (թողարկվում էր արտադրանք մայսենյան և սևրյան ոգով): Իտալիայում Ճ-ու արտադրությունն սկսվել է 1720-ին (Վենետիկ): Առավել նշանավոր էր Դոչչիայի (Ֆլորենցիայի մոտ) մանուֆակտուրան (1735): 1743-ին Նեապոլի և Սիցիլիայի արքա Կառլ III հիմնադրել է Կապո դի Մոնտեի (Նեապոլի մոտ) մանուֆակտուրան, ուր հիմնականում արտադրում էին չինական մոտիվներով ամանեղեն, մանր պլաստիկա, ուռուցիկ քանդակազարդեր: XVIII—XIX դդ. կարծր և փափուկ Ճ-ու գործարաններ են հիմնվել Դանիայում (Կոպենհագեն, 1752), Շվեդիայում (Մարիենբերգ, 1758), Բելգիայում (Տուրնե, 1750), Հոլանդիայում (Վեսպ, 1764, Լոսդրեխտ, 1771, Հաագա, 1778), Չեխիայում (Սլավկով, 1792, Բրժեցովոյ, 1803) և այլ երկրներում: XIX դ., չնայած տեխնիկական կատարելագործմանը, Ճ-ու գեղարվեստական որակը աստիճանաբար ընկել է: XX դ. Ճ-ու արտադրանքի նկարազարդման մեջ ներմուծվում են մեխանիկական եղանակներ՝ պատճենահանում (դեկալկոմանիա), նախշակաղապար (տրաֆարետ), դրոշմահատոց (շտամպ): Ռուսաստանում Ճ-ու արտադրություն կազմակերպելու փորձեր է արել դեռևս Պետրոս I: Մեծ աշխատանքներ են կատարել Մ. Վ. Լոմոնոսովը, մոսկվացի բրուտագործ Ի. Ա. Գրեբենշչիկովը: 1744-ին Պետերբուրգում հիմնադրվել է Ճ-ու առաջին գործարանը, որտեղ, մոտ 1747-ին, քիմիկոս Դ. Ի. Վինոգրադովը բացահայտել է կարծր Ճ-ու արտադրման եղանակը (թողարկվում էին նրբագեղ անոթներ, սպասքներ, ծխախոտատուփեր, կենցաղային արձանիկներ, առանձնապես աչքի էին ընկնում գեղանկարիչ Ի. Չյոռնիի զարդապատած իրերը): Կատարվում էին աշխատանքներ բարոկկոյի, ռոկոկոյի, վաղ կլասիցիզմի («Ռուսաստանյան պետության ժողովուրդներ» ֆիգուրների շարքը), XIX դ. սկզբին՝ ամպիրի (զինվորական տեսարաններ, 1812-ի Հայրենական պատերազմի հերոսների դիմապատկերներ) ոճերով: XIX դ. վերջին—XX դ. սկզբին կիրառվել են բյուրեղային և հրակայուն ջնարակներ: 1914-ից գործարանը հիմնականում թողարկում էր տեխնիկական և քիմ. Ճ.: XVIII—XIX դդ. Ռուսաստանում հիմնադրվել են Ֆ. Յ. Գարդների գործարանը՝ Մոսկվայի նահանգի Վերբիլկի գյուղում (այժմ՝ Դիմիտրովյան պետ. գործարան), թողարկում էր ամանեղեն, կենցաղային ֆիգուրներ, ճանաչված են «շքանշանային» սպասքները, Ա. Գ. Պոպովի գործարանը՝ Գորբունով գյուղում (արտադրանքը, մասնավորապես կենցաղային քանդակները կրում էին դեմոկրատական բնույթ), Ս. Բատենինի գործարանը Պետերբուրգում (արտադրած իրերի նկարազարդումը արտացոլում էր ռուս ժողովրդի կյանքը և սովորությունները) են: 1899-ին խոշոր արդյունաբերող Մ. Ս. Կուզնեցովը ստեղծեց բաժնետիրական ընկերություն, որն ընդգրկեց գրեթե ամբողջ Ճ-ու արտադրությունը: 1918-ին Ճ-ու գործարանները Ռուսաստանում ազգայնացվեցին: Սկսվեց տեխնիկական, կենցաղային, գեղարվեստական Ճ-ու արտադրությունը հայրենական նյութերից: Նոր թեմատիկա էր յուրացվում սովետական ագիտացիոն Ճ-ու մեջ (Ս. Վ. Չեխոնին, Ա. Վ. Շչեկոտիխինա-Պոտոցկայա), ստեղծվում են համապարփակ նմուշներ, որոնք լայն ճանաչման են արժանանում նաև արտասահմանում: 1930-ական թթ. մեծանում է Ճ-ու զանգվածի ջնարակի բարձր որակով մասսայական արտադրանքի թողարկման պահանջը: Մ. Վ. Լոմոնոսովի (նախկին՝ Կայսերական), Դիմիտրովյան, Դուլևյան Ճ-ու գործարաններին կից ստեղծվում են գեղարվեստական լաբորատորիաներ, ուր փորձարկվում էին սովետական Ճ-ու նոր նմուշներ: Գործարաններում աշխատում են բազմաթիվ խոշոր նկարիչներ և քանդակագործներ՝ ստեղծելով պարզ, լակոնիկ ձևեր, նկարազարդեր: 1960—70-ական թթ. Ճ-ու արտադրությունում կիրառվում են նոր, առավել կատարյալ միջոցներ:

1978-ից Արտաշատում գործում է ՀՍՍՀ տեղական արդյունաբերության մինիստրության Հայճենապակի արտադրական միավորման № 1 մասնաճյուղը:

Պատկերազարդումը տես 472-րդ էջից հետո՝ ներդիրում:

*Գրկ.* Сепиванов А. В., Фарфор и фаянс Российской империи, Владимир, 1903; Кочетова С. М., Фарфор и бумага в искусстве Китая, М.—Л., 1956; Н. Андреева Л. В., Советский фарфор, 1920—1930 гг., М., 1975; Jedding H., Europäisches Porzellen, Bd 1—2, München, 1971.

*Հ. Հարությունյան*

**ՃԵՆՏԵՐԵՃՅԱՆ** Մուշեղ, Մուշեղ Իշխան [ծն. 1913, Սիվրիհիսար (Անկարայի նահանգ, Թուրքիա)], հայ բանաստեղծ, մանկավարժ, լրագրող: 1915-ին Ճ-ների ընտանիքը տեղահանվել է, 1923-ին՝ հաստատվել Դամասկոսում: Ճ. տպագրվել է 1930-ական թթ.: Հրատարակել է «Տուներուն երգը» (1936), «Կրակը» (1938), «Կյանք և երազ» (1949), «Ոսկի աշուն» (1963), «Տառապանք» (1968) բանաստեղծությունների ժողովածուները, «Հայաստան» (1946) և «Ողջույն քեզ, կյանք» (1958) պոեմները, «Հացի և լույսի համար» (1951), «Հացի և սիրո համար» (1956) վեպերը, «Մեռնիլը որքան դժվար է» (1971) թատերախաղը և այլ գործեր: Ճ. երգել է սփյուռքահայ զանգվածների ծանր ու դաժան առօրյան: Հայրենիքից կտրված, ապագայի հեռանկարը կորցրած մարդու վիճակը պայմանավորել է նրա պոեզիայում հաճախակի հանդես եկող հոռետեսական և անկումային տրամադրությունները:

*Գ. Սևան*



Մ. Սարյան. «Լեռնային բնանկար» (1972, Մ. Սարյանի տուն-թանգարան, Երևան)

**ՃԵՊԱՆԿԱՐ** պլաստիկ արվեստներում, գրաֆիկայի, գեղանկարչության կամ քանդակագործության (ճեպաքանդակ) փոքրաչափ ստեղծագործություն, որն արվեստագետը կատարում է արագ և թռուցիկ կերպով: Արվեստագետի աշխատանքային պրոցեսում մասնակի դիտարկումների և մտահղացումների արագ սևեռումը Ճ-ի հիմնական նպատակն է: Ճ. կարող է կատարվել առանց բնորդի՝ հիշողությամբ կամ երևակայությամբ: Ճ. իր բնույթով մոտենում է *էսքիզին*:

**ՃԵՊԵՃՅԱՆ** Ռոբերտ (Ռուպերտ) Ավետիսի (ծն. 2.8.1909, Այնթապ), հայ ակնաբույժ, կոկորդաբան, հասարակական գործիչ: Բժշկ. գիտ. թեկնածու (1970, Երևան): 1934-ին ավարտել է Բեյրութի ամերիկյան համալսարանի բժշկ. ֆակուլտետը: 1935-ից ապրում է Հալեպում, ուր 1948-ին հիմնել է «Ճեպեճյան ակնաբուժարանը», որը 1971-ից ակնաբույժների պատրաստման կենտրոն է: Ճ. կատարել է աչքի (հատկապես տրախոմա) և կոկորդի հիվանդությունների բուժման ու կանխարգելման աշխատանքներ: Սիրիայում առաջինն է կիրառել ակնաբուժության ժամանակակից մեթոդները: 1947-ին կատարել է աչքի եղջերապատվաստման վիրահատություն: Մշակել է կոպերն անշարժացնելու նոր եղանակ դիթիլինով, առաջարկել ակնագնդի մեջ թափանցած երկաթի բեկորները հանող մագնիս և ակնաբուժական մի շարք գործիքներ: 1948-ին հիմնել է Աչազրկության կանխարգելման սիրիական ընկերությունը, որի նախաձեռնությամբ Հալեպում բացվել է կույրերի առաջին դպրոցը (1955): 1948-ից ֆրանսիական ակնաբուժական ընկերության, 1965-ից՝ Սիրիայի ակնաբուժական ընկերության անդամ (1975—77-ին՝ նախագահ), 1979-ից՝ ՀՍՍՀ ակնաբույժների ընկերության պատվավոր անդամ, 1956-ից Սիրիայի ներկայացուցիչն է Առողջապահության համաշխարհային կազմակերպությունում: 1955-ին Զարեհ Գաբլանի հետ հիմնել է «Մարտիրոս Սարյան» նկարչական ակադեմիան: Ճ-ի ջանքերով Սովետական Հայաստան են տեղափոխվել նկարիչներ Արմինի և Ժ. Օրագյանի որոշ գործեր, բազմաթիվ ձեռագրեր, հնատիպ գրքեր, հայկ. ժանյակների հավաքածու են: 1968—70-ին ղեկավարել է ՀԲԸՄ Սիրիայի մասնաճյուղը: 1968-ին ստեղծել է ՀԲԸՄ «Մատենագիտական հանձնախումբ», որը հրատարակում է գրքեր

(«Պատմություն Սուրիո հայ տպարաններու», 1973, «Գեղարդ» սիրիահայ տարեգիրք, 1975, 1978): Պարգևատրվել է «Մեսրոպ Մաշտոց» հուշամեդալով:

*Երկ.* Հիվանդություններու կյանքն ու հեղաշրջումը, Հալեպ, 1962: *Վ. Գրիգորյան*

**ՃԵՊԵՃՅԱՆ** Սարգիս, ճերեջի (1864, գ. Ուզունլու, Յոզղաթի գավառ, Թուրքիա — 1920, Հաճըն), Հաճընի 1920-ի ինքնապաշտպանական մարտերի (տես *Հաճընի հերոսամարտ 1920*) մասնակից և հրամանատար: 1914-ի վերջին զորակոչվել է թուրք. բանակ և ուղարկվել Կովկասյան ռազմաճակատ: Երբ սկսվել են հայ զինվորների նկատմամբ թուրք. հալածանքներն ու նրանց զանգվածային բնաջնջումը, Ճ. փախել է բանակից և անցել ռազմաճակատի գիծը: 1918-ին մտել է Անդրանիկի կամավորական ջոկատը, մասնակցել բազմաթիվ մարտերի: 1919-ի սկզբին մեկնել է Կ. Պոլիս, այնտեղից Կիլիկիա: 1920-ին նշանակվել է Հաճընի ինքնապաշտպանության ուժերի հրամանատար: 1920-ի մարտին քեմալական 20 հզ. զորքերը պաշարել են Հաճընը: Անհավասար մարտում Ճ. ծանր վիրավորվել է և խուսափելով գերի ընկնելուց, վերջին գնդակով ինքնասպան է եղել:

*Գրկ.* Սահակյան Ռ. Գ., Թուրք-ֆրանսիական հարաբերությունները և Կիլիկիան 1919—1921 թթ., Ե., 1970: *Գ. Հարությունյան*

**«ՃԵՐԻՏԵԻ ՇԱՐՔԻԵ»** («Օրագիր արևելյան»), հայատառ թուրքերեն օրաթերթ: Լույս է տեսել 1885—1913-ին, Կ. Պոլսում: Արտոնատեր-խմբագիր Տ. Ճիվելեկյան, խմբագիր՝ Հ. Վարժապետյան (1907-ից): Ունեցել է լիբերալ բուրժ. ուղղություն: Հրատարակվելով հիմնականում թրքախոս հայերի համար՝ թերթը 1890-ական թվականներից ավելի լայն տեղ է հատկացրել հայերեն նյութերին (ինքնուրույն և թարգմանական գեղարվեստական ստեղծագործություններ, բանավիճային հոդվածներ ևն): Տպագրել է զրույցներ, թարգմանական և ինքնուրույն վեպեր, լուսաբանել արևմտահայ հասարակական-մշակութային կյանքը, ներկայացրել հոդվածներ հայ գրականության, թատրոնի և նրա գործիչների (Պ. Ադամյան և ուրիշներ) մասին: Հաջորդել է 1877—84-ին հրատարակված «Թերճըմանը էֆքյար» («Թարգման մտածման», խմբագիրներ՝ Տ. Ճիվելեկյան, Ա. Սագզյան) թերթին: *Գ. Ստեփանյան*

**ՃԵՐՄԱԿ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Քղիի գավառում: 1909-ին ուներ 1050 (150 ընտանիք) հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ և արհեստներով: Գյուղում կար եկեղեցի և դպրոց: Ճ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին:

**ՃԵՊԸՐ**, Պ ո զ յ ու ղ, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Քղիի գավառում: 1909-ին ուներ 350 (50 ընտանիք) հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Ուներ եկեղեցի և դպրոց: Ճ-ի հայերը տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է բռնագաղթի ճանապարհին:

**ՃԻԱԹՈՒՐԱ**, հանրապետական ենթակայության քաղաք (1921-ից) Վրացական ՍՍՀ-ում, Ղվիրիլա գետի հովտում: Բն. 26 հզ. (1974): Երկաթուղային կայարան է: ՍՍՀՄ մանգանի արդյունաբերության խոշոր կենտրոն: Կա շինանյութերի արտադրություն, սննդի արդյունաբերություն, թեյի, կարի ֆաբրիկաներ, դրամատիկական թատրոն, հայրենագիտական թանգարան:

**ՃԻԱՈՒՐԵԼԻ** Միխայիլ Էդիշերի [25.1(6.2).1894, Թիֆլիս — 31.10.1974, Թբիլիսի], վրացի սովետական կինոռեժիսոր: ՍՍՀՄ ժող. արտիստ (1948): ՍՄԿԿ անդամ 1940-ից: Եղել է թատրոնի դերասան, նկարիչ և ռեժիսոր: 1921-ին նկարահանվել է կինոյում (Արսեն, «Արսեն Ջորջիաշվիլի»), այնուհետև աշխատել գլխավորապես կինոռեժիսոր: Առաջին ֆիլմերից են՝ «Առաջին կոռնետ Ստրեշնևը» (1928, Ե. Ձիգանի հետ), «Սաբա» (1929), «Խաբարդա» (1931): Ճ-ի ստեղծագործությանը բնորոշ պատմահեղափոխական առաջին ֆիլմը «Վերջին դիմակահանդես»-ն է (1934):



Կադր «Օթարի այրին» կինոնկարից (1958), ռեժիսոր՝ Մ. Ճ ի ա ու ր ե լ ի

Լավագույն կինոնկարներից են՝ «Արսեն» (1937), «Գեորգի Սաակաձե» (1942, 1943), «Երդում» (1946), «Բեռլինի անկումը» (1950), «Օթարի այրին» (1958): Արժանացել է ՍՍՀՄ պետ. մրցանակների (1941, 1943, 1946, 1947, 1950):

*Գրկ.* Маневич И., Михаил Чиаурели, М., 1950.

**ՃԻԱՈՒՐԵԼԻ** Սոֆիկո Միխայիլի (ծն. 21.8.1937, Թբիլիսի), վրացի սովետական դերասանուհի: Վրաց. ՍՍՀ (1972) և ՀՍՍՀ (1979) ժող. արտիստուհի: Մ. *Ճիաուրելիի* և Վ. *Անջափարիձեի* դուստրը: 1960-ին ավարտել է Մոսկվայի կինեմատոգրաֆիայի համամիութենական պետ. ինստ-ի դերասանական ֆակուլտետը: Կինոյում նկարահանվում է 1957-ից: Լավագույն դերերից են՝ Ջոսյա («Գեներալը և մարգարտածաղիկները», 1964), Տասյա («Այդ են մեր ժամանակները», 1967, երկուսն էլ՝ ռեժ. Մ. Ճիաուրելի), Դերիկո («Մի վշտանա», ռեժ.՝ Գ. Դանելիա, 1969), Սոֆիկո («Մի քանի հարցազրույց անձնական հարցերով», ռեժ.՝ Լ. Ղողոբերիձե, 1979, ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1980): Ճ. նկարահանվել է նաև «Հայֆիլմ»-ում՝ Աննա և



Ս. Ճ ի ա ու ր ե լ ի ն Թուրվանտայի դերում (կադր «Կտոր մը երկինք» կինոնկարից, 1980, ռեժ. Հ. Մալյան)

պատանի Սայաթ-Նովա («Նռան գույնը», ռեժ. Ս. Փարաջանով, 1969), Արնիկ («Արնիկ», ռեժ-ներ՝ Ա. Հայրապետյան, Ա. Աղաբաբով, 1979, հեռուստատեսային կինոնկար), Թուրվանտա («Կտոր մը երկինք», ըստ Վ. Թոթովենցի, ռեժ.՝ Հ. Մալյան, 1980): *Ս. Գալստյան*

**ՃԻՋԵՐՈՋ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Խլաթի գավառում: 1909-ին ուներ 115 (10 ընտանիք) հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Ճ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին: Սակավաթիվ փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՃԻԶՎԻՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ**, դաստիարակության համակարգ, որը մշակել է *ճիզվիտների* միաբանությունը: Նրա սկզբունքներն ու մեթոդիկան շարադրվել են դպրոցական հատուկ կանոնադրությունում՝ «Ratio atque institutio atudiorum Societatis Jesu» (հաստատվել է 1599-ին): Ճ. դ-յան նպատակն էր պատրաստել կաթոլիկ եկեղեցուն հնազանդ սպասավորներ: Ճիզվիտական դպրոցները բաժանվել են տ ա ր ր ա կ ա ն ի՝ կոլեգիաների (ուսման տևողությունը՝ 7 տարի) և բ ա ր ձ ր ա գ ու յ ն ի՝ սեմինարիաների (ուսման տևողությունը՝ 6 տարի): Տարրական դպրոցներն ստեղծվել են Վերածննդի շրջանում և իրենց տված կրթության ծավալով ու բնույթով մոտ էին գիմնազիաներին:

XVIII դ. սկզբին հաշվվում էր մոտ 800 ճիզվիտական ուս. հաստատություն, այդ թվում ավելի քան 20 համալսարան: 1832-ին ճիզվիտները վերանայեցին դպրոցական կանոնադրությունը. հիմնական սկզբունքներն ու նպատակները մնացին նույնը՝ ավելացավ ուս. առարկաների թիվը (հիմնականում բնա-մաթեմատիկական դիսցիպլիններ): XX դ. սկզբին թույլ տրվեց փոփոխություններ մտցնել առանձին ուս. հաստատությունների ուս. պլաններում՝ ելնելով տեղի պայմաններից ու պահանջներից: Կապիտալիստական շատ երկրներում (Իսպանիա, Պորտուգալիա, ԱՄՆ, Լատինական Ամերիկայի երկրներ ևն) ճիզվիտները այժմ նույնպես մեծ ազդեցություն ունեն ժող. կրթության վրա. նրանք բաց են անում իրենց դպրոցները, պետ. ու մասնավոր դպրոցների համար պատրաստում ուսուցիչներ (ԱՄՆ-ում

հաշվվում է մոտ 50 ճիզվիտական ուս. հաստատություն):

**ՃԻԶՎԻՏՆԵՐ**, եզվիտներ, հիսուսյաններ (Հիսուս անվան լատ. ձևից՝ Jesus), կաթոլիկ կուսակրոն միաբանության անդամներ: Ինքնանվանումը «Societas Jesu» (լատ.)՝ «Հիսուսի ընկերություն»: Հիմնադրել է իսպանացի ազնվական Իգնատիոս Լոյոլան, 1534-ին, 1540-ին հաստատել է Հռոմի պապը: Նպատակն էր կաթոլիկության պաշտպանությունն ու տարածումը, Հռոմի պապի իշխանության ամրապնդումը: Ճ. կազմակերպվում էին խստագույն կարգապահության, կրտսեր անդամների անվերապահ հնազանդության սկզբունքով: Միջամտում էին պետ., գիտական, կրթա-դաստիարակչական կյանքին, լայնորեն ծավալում միսիոներական գործունեություն: Միաբանությունը գործադրում էր ամենաստոր մեթոդները: Այն Հռոմի պապերի ձեռքին ազդու միջոց էր Ռեֆորմացիայի, լուսավորության, աղանդավորական շարժումների դեմ մղած պայքարում: Ճ-ի նշանաբանն էր՝ «Նպատակն արդարացնում է միջոցները»: XVII դ. սկզբին Պարագվայում Ճ. ստեղծեցին պետություն (1610—1768): XVI—XVIII դդ. եվրոպական պետությունների քաղ. կյանքին Ճ-ի միջամտությունը առաջացրեց բուռն դիմադրություն: Հռոմի պապն ստիպված եղավ 1773-ին վերացնել Ճ-ի միաբանությունը, սակայն 1814-ին այն վերականգնվեց: XVI դարից Ճ. թափանցեցին Հնդկաստան, Չինաստան, Ճապոնիա, Հաբեշստան, Լատինական Ամերիկա՝ նպաստելով մեծ տերությունների գաղութային քաղաքականությանը: Այժմ Ճ. գործակցում են իմպերիալիզմի ամենահետադիմական շրջաններին՝ սոցիալիզմի, կոմունիզմի դեմ մղվող պայքարում:

Տնօրինում են 1300 լրագիր և հանդես, բազմաթիվ բարձրագույն և միջնակարգ ուս. հաստատություններ:

Ռուսաստանում Ճ. փորձել են հաստատվել XVI դարից (նրանց այդ հաջողվել է միայն Եկատերինա II-ի օրոք): 1820-ին ցարի հրամանով արգելվել է Ճ-ի գործունեությունը Ռուսաստանում: XVII դ. 1-ին կեսին ֆրանս. և ավստ. կառավարությունների միջնորդությամբ Ճ. իրավունք ստացան գործելու Թուրքիայում, իսկ 1681-ից՝ նաև Իրանում: 1650-ից Ճ. թափանցեցին Հայաստան և հայաբնակ ուրիշ վայրեր (Սպահան, Շիրազ, Նոր Ջուղա, Թիֆլիս, Շամախի ևն): 1680-ական թթ. նրանք հաստատվեցին Էրզրումում, Երևանում, իսկ XVIII դ.՝ Կարսում, Բայազետում, Ալաշկերտի, Արաբկիրի, Տրապիզոնի, Գյումուշխանեի գավառներում՝ կաթոլիկ դարձնելով զգալի թվով հայ ընտանիքների: Ճ. գժտություններ, կռիվներ էին սերմանում հայ բնակչության տարբեր խմբերի միջև՝ հարուցելով նրանց դժգոհությունը: Ճ-ին հակահարված տվեցին Շամախու, Բաղեշի և այլ վայրերի հայ բնակիչները: Վիժեցվեց նաև Էջմիածնի կաթողիկոսներին իրենց ազդեցության տակ գցելու Ճ-ի փորձը:

*Գրկ*. Հակոբ Հիսուսյան (Վիլլոտ), Պատմագրութիւն կաթողիկոսաց և թագաւորաց Հայոց, Վնտ., 1713: Михневич Д. Е., Очерки из истории католической реакции. (Иезуиты), 2 изд., М., 1955.

**ՃԻԿՌ**, ճկուռ, կացին, տապար, սակր, հնագույն, հավանաբար՝ կացնաձև զենք: Հայկական լեռնաշխարհում տարածված է եղել մ. թ. ա. III հազարամյակից: Սկզբում ձուլել են բրոնզից, միջին դարերում կռել են նաև երկաթից: Ըստ Ս. Գաբամաճյանի՝ բառն առաջացել է հնդկ. «չագռամ» (լախտ) ձևից, եղել է փոկից կախված սուր եզրերով անիվ՝ թշնամու վրա նետելու համար: Երբեմն Ճ. համարում են սրածայր նիզակ: Բառը հին գրականության մեջ գործածված է միայն հոլովված ձևերով (ճկռովն, ճկռուն ևն), որի պատճառով հավանական են համարվում և՛ ճիկռ, և՛ ճկուռ ուղիղ ձևերը:

*Ս. Հմայակյան*

**ՃԻՃԱՊԱՂ**, հայաբնակ գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Կիսկիմի գավառում: 1914-ին ուներ 184 ընտանիք՝ 1272 բնակիչներով, որից 118-ը՝ արտագնաց աշխատանքում, գլխավորապես Կովկասում և Ուկրաինայում: Ճ-ի տները 2—3-հարկանի էին՝ շրջապատված մրգառատ պարտեզներով: Գյուղում կար Մայր եկեղեցի և 7 մատուռ, երկսեռ վարժարան, գործում էր թատերասիրաց խումբ:

Զբաղվում էին երկրագործությամբ, այգեգործությամբ և անասնապահությամբ: Ճ. Խոտորջրի առևտրի կենտրոնն էր, ուներ մի քանի արհեստանոց, խանութ, իջևանատուն ևն: Ճ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ և զոհվել բռնագաղթի ճանապարհին:

*Թ. Գևորգյան*

**ՃԻՃՎԱԹԱՓՈՒԹՅՈՒՆ**, դեհելմինթիզացիա, *դեվաստացիայի* բաժին. բուժկանխարգելիչ միջոցառումների համալիր, որի նպատակն է բնակչության և կենդանիների առողջացումը՝ *ճիճվային հիվանդություններից*: Տերմինն առաջարկել է ակադեմիկոս Կ. *Սկրյաբինը*, 1925-ին: Ճ. կատարվում է բուժիչ (հիվանդության բռնկումների ժամանակ) և կանխարգելիչ (պլանային կարգով) նպատակով: Հիմնականում կիրառվում է ասկարիդոզի, էնտերոբիոզի, տրիխոցեֆալոզի, հիմենոլեպիդոզի, օպիսթորխոզի, անկիլոստոմիդոզի, դիֆիլոբոթրիոզի, էխինոկոկոզի դեպքում:

**ՃԻՃՎԱՅԻՆ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, ճիճվային ինվազիա, հելմինթոզներ, հիվանդություններ, որոնք առաջանում են բույսերի, մարդու և կենդանիների օրգանիզմում մակաբույծ որդերի (հելմինթների) ներթափանցումից: Տարածված են ամենուրեք:

Ճ. հ. մարդու. հայտնի է շուրջ 150 տեսակ, ՍՍՀՄ-ում հայտնաբերված է 67-ը: Ախտահարվում են հետևյալ հարուցիչներով՝ ծծող որդեր (Trematoda), երիզորդեր (Cestoda) և կլոր որդեր (Nematoda): Ըստ մակաբույծ որդերի տեսակի, Ճ. հ. լինում են տրեմատոդոզներ, ցեստոդոզներ, նեմատոդոզներ ևն: Մարդկանց մոտ առավել հաճախ հանդիպում են. տրեմատոդոզներից՝ *օպիսթորխոզը*, ֆասցիոլոզը, ցեստոդոզներից՝ դիֆիլոբոթրիոզը, հիմենոլեպիդոզը, տենիիդոզը, *էխինոկոկոզը*, նեմատոդոզներից՝ *ասկարիդոզը*, էնտերոբիոզը (տես *Սրատուտ*), անկիլոստոմիդոզը, *տրիխինելոզը*, դրակունկուլոզը, տրիխոցեֆալոզը: Ըստ համաճարակագիտական առանձնահատկությունների Ճ. հ. բաժանվում են երկու խմբի՝ գեոհելմինթոզներ և բիոհելմինթոզներ:

Գեոհելմինթոզների (ասկարիդոզ, տրիխոցեֆալոզ, էնտերոբիոզ, անկիլոստոմիդոզ, ստրոնգիլոիդոզ) հարուցիչներով վարակվում են առանց միջանկյալ տերերի, որդերի ձվիկներով կամ թրթուրներով վարակված ջուրը, բանջարեղենը և մրգերն օգտագործելիս: Բիոհելմինթոզների (տենիիդոզ, ցեստոդոզ, օպիսթորխոզ, շիստոզոմատոզ, կլոնորխոզ, *ռիշտա*) հարուցիչների թրթուրները զարգանում են միջանկյալ, երբեմն էլ լրացուցիչ տիրոջ օրգանիզմում, վարակվում են անբավարար եփած միսն ու ձուկն օգտագործելիս: Առանձին հելմինթների թրթուրներ (օրինակ, ֆիլյարիաները) մարդու օրգանիզմ են թափանցում արյունածուծ միջատների խայթոցով, որոշները (օրինակ, անկիլոստոմները)՝ մաշկի միջոցով: Թզուկ երիզորդի համար մարդը և՛ վերջնական, և՛ միջանկյալ տեր է, վարակումը տեղի է ունենում որդի ձվիկներով վարակված իրերի հետ շփվելիս: Որոշ Ճ. հ-ի (էխինոկոկոզ, տրիխինելոզ, օպիսթորխոզ) հարուցիչները զարգացման միևնույն փուլում կարող են մակաբուծել թե՛ մարդու, թե՛ կենդանիների օրգանիզմում: Երբեմն միևնույն անհատի օրգանիզմում կարող են լինել որդերի երկու և ավելի տեսակներ (օրինակ, ասկարիդ և մազագլուխ): Ճ. հ-ի տարածվածությունը պայմանավորված է բնակավայրերի սանիտարական վիճակով, աշխատանքի և կենցաղի առանձնահատկություններով, բնակլիմայական պայմաններով ևն: Ճ. հ-ի կլինիկական ընթացքը կախված է մակաբույծի տեսակից, օրգանիզմ թափանցած որդերի քանակից, տեղակայումից, օրգանիզմի ընդհանուր վիճակից ևն: Իսկ առաջացած ախտաբանական երևույթները պայմանավորված են գերզգայնության (սենսիբիլիզացիա), հետագայում՝ ալերգիական ռեակցիաներով, թունավորման երևույթներով, հյուսվածքների մեխանիկական վնասվածքներով, որդերի կողմից արյան և սննդանյութերի որոշ մասի (հատկապես վիտամինների) կլանումով: Ճ. հ-ի ընթացքում մարդու օրգանիզմում կարող է մշակվել *իմունիտետ*: Ախտորոշումը. հիվանդի կղանքում մակաբույծ որդերի ձվիկների կամ թրթուրների հայտնաբերմամբ, առանձին դեպքերում՝ իմունոլոգիական մեթոդներով: Բուժումը պայմանավորված է հիվանդության տեսակով: Կանխարգելումը. սանհիգիենային կանոնների պահպանում, մսամթերքների և ձկան բավարար ջերմային մշակում: Բնակչության մեջ պլանային *ճիճվաթափության* մեթոդների կիրառում:

Ճ. հ. կենդանիների. տարբեր օրգաններում և հյուսվածքներում մակաբուծում են շուրջ 8000 տեսակ հելմինթներ, որոնցից 2000-ը (խմբավորված կլոր, ժապավենաձև որդերի, տրեմատոդների և ականտոցեֆալների դասերում)՝ գյուղատնտ. և արդյունագործական կենդանի-

ների մոտ: Տարածված են ամենուրեք և տնտ. մեծ վնաս են պատճառում անասնապահությանը: Առավել հաճախ հանդիպում են. տրեմատոդոզներից՝ *ֆասցիոլյոզը*, դիկրոցելիոզը, պարամֆիստոմոզը, թռչունների պրոսթոգոնիմոզը, ցեստոդոզներից՝ մոնիեզիոզը, *ֆինոզը*, ավիտելինոզը, *պտտախտը*, էխինոկոկոզը, նեմատոդոզներից՝ ասկարիդոզը, ասկարիդիոզը, դիկտիոկաուլոզը, տրիխինելոզը, թելազիոզը, ականտոցեֆալոզներից՝ պոլիմորֆոզը, ֆիլիկոլիոզը ևն: Հելմինթները կարող են առաջացնել օրգանների և հյուսվածքների վնասվածք, ատրոֆիա, լուսանցքի (աղիքների, շնչուղիների, լեղուղիների ևն) խցանում, արյունահոսություն, թրթուրների միգրացիայի ժամանակ՝ բորբոքումներ, ինչպես նաև սնվելով օրգանիզմի սննդանյութերի հաշվին՝ ավիտամինոզներ և անօրգանական նյութերի քաղց: Դրանց արտադրած տոքսինները (թույները) օրգանիզմում խախտում են նյութափոխանակությունը: Կ ա ն խ ա ր գ ե լ մ ա ն և պ ա յ ք ա ր ի մ ի ջ ո ց ա ռ ու մ ն ե ր. կերակրման և խնամքի պայմանների բարելավում, գոմաղբի կենսաջերմային վարակազերծում, անասնապահական շենքերի, բակերի դեզինվազիա, իսկ բուժման և կանխարգելման նպատակներով՝ ճիճվաթափություն: Ճ. հ-ի բուժման, կանխարգելման և այլ խնդիրների ուսումնասիրմամբ զբաղվում են համապատասխան ԳՀԻ-ները և լաբորատորիաները: ՀՍՍՀ ԳԱ կենդանաբանության ինստ-ում ուսումնասիրվել են մուֆլոնի, բեզոարյան այծի, թռչունների առանձին հելմինթները, հավերի և ոչխարների ցեստոդների զարգացման փուլերը, մշակվել են ճիճվաթափման մեթոդներ, իսկ անասնաբուծության և անասնաբուժության ԳՀԻ-ում՝ հորթերի նեոասկարիդոզի, ոչխարների թոքերի նեմատոդների, ֆասցիոլների ևնի կենսաբանությունն ու այլ հարցեր:

*Գրկ.* Подъяпольская В. П. и Капустин В. Ф., Глистные болезни человека, 3 изд., М., 1958.

*Մ. Ջամբազյան, Ս. Ստեփանյան*

**ՃԻՆԻՍ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի համանուն գավառում: 1909-ին ուներ 65 ընտանիք հայ բն., զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ և արհեստներով: Գյուղում կար դպրոց և եկեղեցի: Ճ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին:

**ՃԻՊՈՏ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Սպերի գավառում, Ճորոխի աջ ափին: 1909-ին ուներ 40 տուն հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ և մեղվաբուծությամբ: Ուներ եկեղեցի և ծխական դպրոց: Հ-ի հայերի մեծ մասը զոհվել է 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: *Թ. Գևորգյան*

**ՃԻՎԱՆՅԱՆ** Մկրտիչ Հովհաննեսի (1848, Կ. Պոլիս —1906, Կ. Պոլիս), հայ նկարիչ: Ծնվել է պալատական երաժշտի ընտանիքում: Մասնագիտական կրթություն է ստացել Կ. Պոլսի Ս. Փրկչի վարժարանում՝ Ա. Սարգսյանի, ապա՝ ֆրանսիացի նկարիչ Մասոնի մոտ (1871—73), կատարելա-



Մ. Հ. Ճիվանյան

գործվել Իտալիայում (1876—79): 1876-ին Կ. Պոլսում արժանացել է Հ. Այվազովսկու բարձր գնահատականին: Մասնակցել է 1882-ին Կ. Պոլսում բացված առաջին գեղարվեստական ցուցահանդեսին: 1894—1905-ին ապրել է Օդեսայում և Պետերբուրգում: Հիմնականում ստեղծել է Ոսկեղջյուրի և Բոսֆորի ափերը պատկերող ռոմանտիկական բնույթի բնանկարներ: Ճ. հայ կերպարվեստում ռոմանտիկական ուղղության սկզբնավորողներից է: Նրա



Մ. Ճ ի վ ա ն յ ա ն. «Ալեհույզ ծովը փոթորկից առաջ» (1894, Ռ. Շիշմանյանի սեփականություն, Երևան)

կարևորագույն աշխատանքները՝ «Գարուն», «Ալեհույզ ծովը փոթորկից առաջ», «Ֆեներիի փարոսը», «Լորդ Բայրոնի երազը», «Հրդեհ Ստամբուլում», «Առավոտը ծովի վրա», արժանացել են ժամանակակիցների բարձր գնահատականին: Ճ. ձգտել է պատկերվող տեսարանի գեղեցկացմանն ու իդեալականացմանը, ապրումների քնարական դրսևորմանը: Վարպետորեն է վերարտադրել օդի թեթևությունն ու լույսի էֆեկտավոր ելևէջումները, նյութականությունը: Զբաղվել է նաև թատերական-դեկորատիվ և մոնումենտալ արվեստներով, ձևավորել է 1860-ական թթ. Կ. Պոլսի թատրոնների ներկայացումները (հայ իրականության մեջ առաջիններից մեկը այդ ասպարեզում) և ճարտ. Պալյանների կառուցած մի շարք շենքեր (Բեյլերբեյի, Չրաղանի, Էլթզի պարտեզի պալատները): Կ. Պոլսում որպես երգիչ մասնակցել է իտալ. օպերայի ներկայացումներին: Շփումներ է ունեցել վտարանդի գարիբալդիական երիտասարդության հետ:

*Գրկ.* Շ ի շ մ ա ն յ ա ն Ռ., Բնանկարն ու հայ նկարիչները, Ե., 1958: Մ ա ր տ ի կ յ ա ն Ե., Հայկական կերպարվեստի պատմություն, գիրք 2, Ե., 1975: *Մ. Ղազարյան*

**ՃԿԵՐ**, համանուն կենտրոնով գավառ Կիլիկյան Հայաստանի հարավ-արևելյան անկյունում, Հայոց (Ալեքսանդրետ) ծոցի արլ. ափամերձ շրջանում: 1185-ին Ռուբեն Բ իշխանը Ճ. և այլ բերդեր հարկադրաբար զիջեց Անտիոքի դքսությանը և ազատվեց գերությունից: Սակայն Լևոն Բ նույն թվականին ազատագրեց այդ բերդերը (Ճ-ի բերդատեր իշխանը հիշվում է Լևոն Բ-ի թագադրման արարողության մասնակիցների թվում): 1214-ին Լևոն Բ Ճ. պարգևում է խաչակիր ասպետներին՝ հարկային և զինվորական ծառայության դիմաց: Լևոն Բ-ի և խաչակիր ասպետների միջև կնքած լատիներեն պարգեվագրում Ճ. բերդից և Մաշկևոր վանքից բացի գավառում հիշատակվում են 10 այլ բնակավայր, որոնցից հայտնի է միայն Պայաս ավանագյուղը:

*Գրկ.* Ա լ ի շ ա ն Ղ., Սիսուան, Վնտ., 1885: *Թ. Հակոբյան*

**ՃԿՎԱԾՔ**, ուժային, ջերմային և այլ գործոններից առաջացած դեֆորմացիայի հետևանքով հեծանի (կամարի ևն) առանցքի կամ թաղանթի (սալի) միջին մակերևույթի որոշակի կետի ուղղաձիգ տեղափոխություն: Ճ-ի առավելագույն մեծությամբ որոշվում է կոնստրուկցիայի սահմանային վիճակներից մեկը:

**ՃԿՎԱԾՔ**, երկրակեղևի իջած կամ ճկված տեղամաս, որ լցված է նստվածքային, նստվածքա-հրաբխածին կամ հրաբխածին հաստվածքներով: Ճ-ները սովորաբար կապված են բարձրացումների հետ և զարգանում են բեկվածքային զոնաների երկարությամբ: «Ճ.» տերմինը հիմնականում կիրառվում է ձգված (լայնության և երկարության հարաբերությունը >1:3) բացասական ստրուկտուրաների համար: Ճ. լինում է՝ պլատֆորմային, գեոսինկլինալային, օրոգեն, կոմպենսացված ու չկոմպենսացված ևն:

**ՃԿՎԱԾՔԻ ՍԼԱՔ**, արտաքին ուժերի ներգործությամբ ծռվող կոնստրուկտիվ տարրի (հեծան, ֆերմա ևն) առանցքի առավելագույն շեղումը՝ առանցքին ուղղահայաց ուղղությամբ: Ճ. ս-ի մեծությունը սահմանափակվում է շինարարական կոնստրուկցիաների նախագծման նորմերով:

**ՃԿՈՒՆ ԼԻՍԵՌ**, ոլորման դեպքում մեծ և ծռման դեպքում փոքր կոշտություն ունեցող լիսեռ: Ծառայում է պտույտը և ոլորման մոմենտը մեկ առանցքից մյուսին փոխանցելու համար, ընդ որում առանցքների դիրքը աշխատանքի ընթացքում փոփոխվում է: Լինում է լարային և հոդակապավոր: Լ ա ր ա յ ի ն Ճ. լ. հեշտ ծռվում է ցանկացած ուղղությամբ և բաղկացած է




Զ ր ա հ ո վ և ծ ա յ ր ա յ ի ն ա մ ր ա ն ո վ լ ա ր ա յ ի ն ճ կ ու ն լ ի ս ե ռ. *1*. ճկուն լիսեռ, *2*. միջուկ, *3*. հյուսվածքի շերտ, *4*. զրահ, *5*. ամրան

միջուկից ու լարերի մի քանի շերտերից: Յուրաքանչյուր շերտ էլ ունի հյուսվածքի իրար հաջորդող ուղղություններով մի քանի լար (նկ.): Ճ. լ-ները լինում են աջ և ձախ պտտման, որովհետև լարի արտաքին շերտը պետք է աշխատի ոլորման տակ:

Այս լիսեռները նորմալացված են և լայնորեն կիրառվում են ուժային փոխանցումների, հեռակառավարման և վերահսկման համար: Հ ո ղ ա կ ա պ ա վ ո ր Ճ. լ-ները բաղկացած են պատյանի մեջ տեղավորված հոդակապերով միացված կարճ օղակների շարքից: Այս լիսեռները հազվադեպ են կիրառվում:

**ՃԿՈՒՆՈՒԹՅՈՒՆ ՁՈՂԻ** ն յ ու թ ե ր ի դ ի մ ա դ ր ու թ յ ու ն ու մ, ձողի բերված երկարության հարաբերությունը նրա լայնական հատվածքի իներցիայի ամենափոքր շառավղին: Բնութագրում է ձողի դիմադրելիությունը՝ կայունությունը կորցնելու նկատմամբ (երկայնական ծռման դեպքում):

**ՃՄՌՈՒՌ**, ճ մ ր ու ռ, կերակուր: Ցուլի մեջ բրդում են տաք հաց և ձեռքով ճմռում մինչև յուղի ներծծվելը: Երբեմն ավելացնում են նաև մեղր կամ շաքար: Ճ. պատրաստում են նաև ձեթով:

**ՃՅՈՒՂԱՅԻՆ ԷԿՈՆՈՄԻԿԱ** Ս Ս Հ Մ-ում, տնտեսական գիտություն, որն ուսումնասիրում է ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում արտադրական հարաբերությունների զարգացման, սոցիալիզմի օբյեկտիվ տնտ. օրենքների գործողության առանձնահատկությունները, սոցիալիստական վերարտադրության պրոցեսում ճյուղի տեղն ու դերը, միջճյուղային կապերի բնույթը, թողարկվող արտադրանքի տնտ. նշանակությունը և այլն: Գիտամեթոդաբանական հիմքը մարքս-լենինյան քաղաքատնտեսությունն ու մատերիալիստական դիալեկտիկան է: Սերտորեն կապված է մի շարք հարակից տնտ. (սոցիալիզմի քաղաքատնտեսություն, ժողտնտեսության պլանավորում, տնտ. վիճակագրություն ևն), ինչպես նաև տեխ. ու մաթ. գիտությունների, տնտ. աշխարհագրության հետ:

Ա ր դ յ ու ն ա բ ե ր ու թ յ ա ն է կ ո ն ո մ ի կ ա ն ուսումնասիրում է արդյունաբերության մեջ սոցիալիզմի տնտ. օրենքների դրսևորման ձևերը, մշակում տնտ. ղեկավարման համակարգ և մեթոդներ: Ներառնում է առանձին ճյուղերի (ածխի, նավթավերամշակման, գազի, քիմ. արդյունաբերության, մեքենաշինության ևն) էկոնոմիկաները, որոնցից յուրաքանչյուրը, իր հերթին, ուսումնասիրում է արտադրանքի տնտ. նշանակության, այդ ճյուղի նյութատեխ. բազայի, կադրերի կազմի առանձնահատկությունները, միջճյուղային կապերը, հիմնական և շրջանառու ֆոնդերի կառուցվածքի, արտադրության ծախքերի կազմի, ձեռնարկության տիպերի ճյուղային տարբերությունները: Որպես գիտության ինքնուրույն ճյուղ առանձնացվել է ձեռնարկության էկոնոմիկան («Ձեռնարկության կազմակերպում, պլանավորում և կառավարում» անվամբ), որը հետազոտում է միավորումների (ձեռնարկությունների) տնտ. գործունեության և պետության կողմից դրանց տնտ. ղեկավարման հարցերը, արտադրության պրոցեսի բոլոր տարրերի ռացիոնալ զուգակցման մեթոդները՝ դրանց լավագույն օգտագործման նպատակով: Արդյունաբերության էկոնոմիկայի բնագավառում ԳՀԻ-ներում և բուհերում կատարվող գիտական հետազոտությունների հիմնական ուղղություններն են արտադրատնտ. միջոցառումների տնտ. արդյունավետության, բնական ռեսուրսների՝ որպես արդյունաբերության հումքային բազայի ռացիոնալ օգտագործման պրոբլեմները, պլանային ու տնտ. որոշումների և արդ. արտադրության կառավարման կատարելագործման մեթոդների օպտիմալացման հարցերը:

Գ յ ու ղ ա տ ն տ ե ս ու թ յ ա ն է կ ո ն ո մ ի կ ա ն ուսումնասիրում է գյուղատնտեսության մեջ արտադրության, վերարտադրության ու կուտակման, նրա ինտենսիվացման առանձնահատկությունները, գյուղատնտեսության համակարգն ամբողջությամբ: Հետազոտության օբյեկտներն են սոցիալիզմի ագրարային պրոբլեմները, հողի՝ որպես գյուղատնտեսության մեջ գլխավոր արտադրամիջոցի ռացիոնալ օգտագործման ուղիները, ՍՍՀՄ հողային ֆոնդերի դասակարգումն ու կազմը, գյուղատնտեսության նյութատեխ. բազայի ստեղծումն ու տեխ. առաջընթացի զարգացումը, հիմնական ու շրջանառու ֆոնդերի շարժը, հողի տնտ. գնահատումը, գների համակարգը ևն: Առանձնացվում են երկրագործության և անասնաբուծության (ներառյալ՝ կերարտադրությունը) էկոնոմիկաները: Գյուղատնտեսության էկոնոմիկայի մի մասն է գյուղատնտ. ձեռնարկությունների կազմակերպում բաժինը, իսկ ճյուղի ինդուստրացման և այն արդ. հիմքի վրա փոխադրելու հարցերը կազմում են հատուկ բնագավառ:

Շ ի ն ա ր ա ր ու թ յ ա ն է կ ո ն ո մ ի կ ա ն հետազոտում է կապիտալ շինարարության զարգացման ու արդյունավետության օրինաչափությունները՝ կառավարման կազմակերպման ձևերը (մասնագիտացում, կոոպերացում, համակենտրոնացում, համակցում, արտադրական միավորումների ստեղծում), ճյուղի զարգացման (հեռանկարային և ընթացիկ) պլանավորումն ու կանխատեսումը, կապիտալ ներդրումների և շինարարության մեջ գիտատեխ. առաջընթացի տնտ. արդյունավետությունը (գործոններ, չափանիշներ, ցուցանիշներ, նորմատիվներ), ռեսուրսներն ու դրանց օգտագործումը (ներառյալ նյութատեխ. բազայի զարգացման, արտադրական հիմնական ֆոնդերի վերարտադրության և ձևավորման, շրջանառու միջոցների նորմավորման, աշխատանքի արտադրողականության բարձրացման ևն հարցեր): Զբաղվում է նաև շինարարական նախագծման, տիպայնացման, ինդուստրացման տնտ. հիմունքների մշակմամբ, տնտեսավարման ու խթանման մեթոդների (տնտհաշվարկ, շինարարության ֆինանսավորում ու վարկավորում ևն) հիմնավորմամբ:

Տ ր ա ն ս պ ո ր տ ի է կ ո ն ո մ ի կ ա ն ընդգրկում է երկաթուղային, ծովային, գետային, ավտոմոբիլային, օդային, խողովակաշար տրանսպորտի էկոնոմիկաները: Ուսումնասիրում է տրանսպորտի յուրաքանչյուր տեսակի տեխնիկատնտ. առանձնահատկությունները, կառավարման կազմակերպումը, օպտիմալ տեխ. և կազմակերպական որոշումների ընտրության սկզբունքներն ու մեթոդները, բեռնա- և ուղևորափոխադրումների էկոնոմիկան, աշխատանքի ու աշխատավարձի գիտական կազմակերպումը ևն: Տրանսպորտի էկոնոմիկայի գիտ. հանձնարարականները լայնորեն օգտագործվում են արտադրության տերիտորիալ տեղաբաշխման, ձեռնարկությունների օպտիմալ չափերի ընտրության, արտադրության մասնագիտացման ու կոոպերացման խնդիրների հիմնավորման ժամանակ:

Կ ա պ ի է կ ո ն ո մ ի կ ա ն ուսումնասիրում է կապի զարգացման օրինաչափությունները, տնտ. ղեկավարման ձևերն ու մեթոդները՝ ամբողջ ճյուղի ու նրա առանձին ենթաճյուղերի (փոստային, հեռագրային, հեռախոսային, ռադիո- և տեսակապ ևն) աշխատանքի արդյունավետության ու որակական ցուցանիշների բարձրացման նպատակով: Մշակում է կապի ձեռնարկությունների կառավարման կատարելագործման, պլանատնտ. աշխատանքի մեթոդաբանության ու կազմակերպման առաջարկություններ, աշխատանքի ու արտադրության կազմակերպման, ճյուղի աշխատանքի պլանավորման, տնտ. ցուցանիշների վերլուծության ու արտադրության արդյունավետության վրա դրանց ազդեցության գնահատման մեթոդներ, կապի ծառայությունների տարիֆային սիստեմի, ճյուղի ձեռնարկությունների արտադրանքի գների կատարելագործման հանձնարարականներ:

Ա ռ և տ ր ի է կ ո ն ո մ ի կ ա ն հետազոտում է ապրանքային պաշարների մեծության, ապրանքների շրջանառության պրոցեսի, դրա արագության ու ծավալի, ապրանքաշրջանառության կառուցվածքի փոխկապվածությունը, նաև ապրանքների արտադրության, առաջարկի ու պահանջարկի վրա առևտրի ազդեցությունը, ապրանքաշրջանառության ծավալի աճի ու ճյուղի նյութատեխ. բազայի զարգացման հարաբերակցությունը: Ուսումնասիրում է նաև կառավարման ու պլանավորման, տնտ. խթանման, անձնական սպառման ծավալի ու կառուցվածքի պրոբլեմները, բնակչության վճարունակ պահանջարկի գնահատման մեթոդները, մշակում ապրանքաշրջանառության, ապրանքային պաշարների ձևավորման ու տեղաբաշխման պլանավորման գիտական մեթոդաբանություն ևն: Ձևավորվում և զարգանում են նաև ոչ արտադրական ոլորտի (առողջապահության, գիտության, կրթության ևն) Ճ. է-ներ:

*Գրկ.* Սոցիալիստական արդյունաբերության էկոնոմիկան, խմբագրությամբ Լ. Ի. Իտինի, Ե., 1977: Х а ч а т у р о в Т. С., Экономика транспорта, М., 1959; Экономика социалистического сельского хозяйства, М., 1970; Экономика связи, 2 изд., М., 1974; Экономика строительства, под ред. Б. Я. Ионаса и С. Н. Рейнина, М., 1977; И в а н и ц к и й В. И., Экономика торговли, Киев, 1978.

**ՃՅՈՒՂԱՎՈՐՈՒՄ** բ ու յ ս ե ր ի. լինում է 2 հիմնական տիպի՝ դիխոտոմիկ և մոնոպոդիալ: Դ ի խ ո տ ո մ ի կ կամ եղանաձև Ճ-ման դեպքում գագաթային բողբոջը երկատվում է երկու նոր բողբոջի, որից աճում են մոտավորապես հավասար երկարությամբ ու հաստությամբ 2-րդ կարգի ճյուղեր: Սրանք կարող են ճյուղավորվել և առաջացնել 3-րդ կարգի ճյուղեր ևն:




Ճյուղավորում. *1*. դիխոտոմիկ, *2*. մոնոպոդիալ, *3*. սիմպոդիալ, *4*. կեղծ դիխոտոմիկ: Հռոմեական թվերով նշված են տարբեր կարգի ճյուղերը:

Ճ-ման նշված տիպը առավել պարզ է, քիչ արդյունավետ և հատուկ է ստորակարգ բույսերին (ջրիմուռներ, որոշ սնկեր), բարձրակարգ բույսերի հին ձևերին (լերդամամուռ են): Մոնոպոդիալ Ճ-ման ժամանակ գլխավոր ցողունի աճը չի ընդհատվում: Գագաթի տակ առաջանում են ավելի թույլ զարգացած 2-րդ կարգի ճյուղեր, որոնք էլ առաջացնում են 3-րդ կարգի ճյուղեր են: Բարձր կարգի ընձյուղներն ավելի կարճ են նախորդներից, այդ պատճառով բույսը ստանում է կոնաձև տեսք (սոճի, եղևնի, որոշ խոտաբույսեր): Սիմպոդիալ Ճ. կարող է առաջանալ ինչպես դիխոտոմիկ, այնպես էլ մոնոպոդիալ Ճ-ից: Առաջին դեպքում մի ճյուղը զարգանում է ավելի ուժեղ և ընդհանուր առանցքի դիրք ընդունում, իսկ երկրորդն ստանում է հաջորդ կարգի ճյուղի տեսք: Երկրորդ, ավելի տարածված եղանակի դեպքում գլխավոր ցողունի աճն ընդհատվում է, և նրա տեղը զբաղեցնում է գագաթին ամենամոտ կողմնային ճյուղը: Հաճախ գլխավոր բնի վրա առաջանում են մի քանի խոշոր, համաչափ ճյուղեր: Այս տիպը բնորոշ է ծաղկավոր բույսերի մեծամասնությանը՝ պտղատու ծառերին (տանձենի, խնձորենի, սալորենի), լորենուն, ուռենուն, կեչուն, բանջարաբոստանային կուլտուրաներին են: Ճ-ման վերջին տիպը՝ կեղծ դիխոտոմիկը, առաջանում է մոնոպոդիալից և հատուկ է տերևների հակադիր դասավորություն ունեցող բույսերին: Ընդհատվում է գլխավոր ցողունի աճը, գագաթի տակ առաջանում են համարյա միատեսակ երկու ընձյուղներ, կենտրոնական բողբոջը մահանում է և նրանից միայն հետք է մնում (եղրևանի են):

**ՃՆՃՂԱՊԱՇԱՐ** (Polygonum aviculare), մատիտեղ թռչնոց, ճնճղկապաշար, մատիտեղազգիների ընտանիքի միամյա բույս: Ցողունը կանգուն է կամ գետնատարած, փռվող: Տերևներն ամբողջական են, հերթադիր, ծաղիկները տերևածոցերում են, սպիտակ կամ վարդագույն: Աճում է ամենուրեք, թուրմը բժշկության մեջ օգտագործվում է որպես արյունահոսությունը դադարեցնող և միզամուղ դեղամիջոց: Սխալմամբ Ճ. նույնացվում է ծտապաշարի (Capsella) հետ, որը խաչածաղկավորների ընտանիքի միամյա կամ երկամյա բույսերի ցեղ է: Տերևները նստադիր են, ամբողջական: Ծաղիկները մանր են, սպիտակ, վարդագույն կամ դեղնավուն: Պտուղը պատիճակ է: ՍՍՀՄ-ում աճում է 3 տեսակ, որից սովորական ծտապաշարը ամենուրեք տարածված է նաև Հայաստանում:

**ՃՆՃՂՈՒԿԱԶԳԻՆԵՐ** (Passeriformes), թռչունների կարգ: Ընդգրկում է շուրջ 5 հզ. տեսակ, որից մոտ 300-ը՝ ՍՍՀՄ-ում, 143-ը՝ ՀՍՍՀ-ում: Փոքր և միջին մեծության թռչուններ են, մարմնի երկարությունը՝ 9,5 *սմ*-ից (արքայիկներ) մինչև 65 *սմ* (ագռավներ), քաշը՝ 5—6 *գ*-ից 1100—1600 *գ*: Կտուցը լինում է ուղիղ, երկար ու ծռված, եռանկյունաձև, վերևից սեղմված են: Առաջին կարգի թափահարող փետուրները 10—11-ն են, երկրորդայինները՝ 9-ը, պոչայինները՝ 12: Կան նստակյաց, քոչվոր և չվող տեսակներ: Սեռական երկձևությունն արտահայտվում է չափերով, հաճախ գույնով և ձայնով (երգող Ճ-ի մոտ երգում են միայն արուները): Մոնոգամ և բնակալող թռչուններ են: Սովորաբար դնում են 4—6 խայտաբղետ ձու, երբեմն՝ տարեկան 2—3 անգամ: Թխսում են 11—14, ագռավները՝ 19—20, քնարատուտները՝ 45—50 օր:




Ճնճղուկազգիներ. տնային ճնճղուկ. *1*. արուն, *2*. էգը, դաշտային ճնճղուկ

Հիմնականում երկու սեռն էլ մասնակցում է սերնդի խնամքին: Ճ-ի կարգն ընդգրկում է 4 ենթակարգ, 66 ընտանիք: Պայմանականորեն կարելի է բաժանել միջատներով և բուսական կերով սնվող տեսակների: Օգտակար են, ոչնչացնում են վնասատու միջատներին, պաշտպանում բերքը և անտառը:

**ՃՆՇՄԱՆ ԱՎԱԶԱՆ**, տես *Հիդրոտեխնիկական կառույցներ*:

**ՃՆՇՈՒՄ** մեխանիկայում, մեկ մարմնի կողմից մյուսի մակերևույթին ուղղահայաց ազդող ուժերի ինտենսիվությունը բնութագրող ֆիզիկական մեծություն: Մակերևույթի վրա ուժերի հավասարաչափ բաշխման դեպքում Ճ. մակերևույթի ցանկացած մասում հավասար է՝ $p=F/S$, որտեղ $S$-ը այդ մասի մակերեսն է, $F$-ը՝ ուղղահայաց կիրառված ուժերի գումարը: Ուժերի անհավասարաչափ բաշխման դեպքում այս հավասարությունը որոշում է տվյալ հարթակին ազդող միջին Ճ., իսկ սահմանի անցնելիս, երբ $S$-ը ձգտում է զրոյի՝ Ճ. տվյալ կետում: Անընդհատ միջավայրի համար նույնպես սահմանվում է Ճ. միջավայրի յուրաքանչյուր կետում: Դադարի վիճակում գտնվող հեղուկի ցանկացած կետում Ճ. միևնույնն է բոլոր ուղղություններով: Այս պնդումը ճշմարիտ է նաև շարժվող իդեալական հեղուկների և գազերի համար: Որպես մածուցիկ հեղուկի Ճ. տվյալ կետում ընդունում են Ճ-ման միջին արժեքը երեք փոխուղղահայաց ուղղություններով: Գազերում Ճ. համեմատական է ջերմաստիճանին (մասնիկի կինետիկ էներգիային): Ճ. չափում են *մանոմետրերով*, *բարոմետրերով*, *վակուումաչափերով* և Ճ-ման տվիչներով: Միավորների միջազգային համակարգում Ճ-ման միավորը *ն/մ²* է (պասկալ), միավորների MKGS համակարգում *կգ/սմ²*: Կան նաև Ճ-ման արտահամակարգային միավորներ. *մթնոլորտ* (մթն), *բար*, *մմ ջր. ս.* և *մմ սնդ. ս.*: Ալիքների Ճ-ման ֆիզիկական բնույթի մասին տես *Ձայնի ճնշում*, *Հարվածային ալիք*, *Լույսի ճնշում* հոդվածներում: Ճ-ման դերը մեծ է ֆիզիկական, քիմ., մեխանիկական, կենսբ. և այլ երևույթներում:

**ՃՆՈՒԿ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Վանի վիլայեթի Շատախի գավառում: 1909-ին ուներ 180 (21 ընտանիք) հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Ճ-ի հայերը 1915-ի հուլիսին ռուս. զորքերի հետ գաղթել և բնակություն են հաստատել Արևելյան Հայաստանում:

**ՃՇԳՐԻՏ ԷԼԵԿՏՐԱՍԱՐՔԵՐԻ ԳՈՐԾԱՐԱՆ** Երևանի, ՍՍՀՄ սարքաշինության, ավտոմատացման միջոցների ու կառավարման համակարգերի արդյունաբերության ձեռնարկություն: Հիմնադրվել է 1946-ին: Արտադրում է էլեկտրական ճշգրիտ սարքեր՝ վոլտմետրեր, միլիվոլտմետրեր, լոգոմետրեր են: 1978-ին, 1946-ի համեմատ, արտադրության ծավալն աճել է 80 անգամ: Արտադրանքն առաքվում է ՍՍՀՄ բոլոր հանրապետությունները, արտասահմանյան 32 երկիր՝ Բուլղարիա, ԳԴՀ, Չեխոսլովակիա, Անգլիա, ԳՖՀ, Ֆրանսիա են: Նոր արտադրատեսակների մշակման և արտադրության տեխնոլոգիայի կատարելագործման հարցերով զբաղվում են Մոսկվայի, Լենինգրադի, Կրասնոդարի, Երևանի ԳՀԻ-ները: 1973-ից ներառնված է *«Էլեկտրասարք»* արտադրատեխնիկական միավորման մեջ:

**ՃՇԳՐԻՏ ՀԱՄԱՁՈՒԼՎԱԾՔՆԵՐ**, ֆիզիկական առանձնահատկություններ և քիմիական ճշգրիտ բաղադրություն ունեցող մետաղե համաձուլվածքներ, որոնց մեծ մասի հիմքը Fe, Ni, Co, Cu, Nb մետաղներն են: Ճ. հ-ի դասին են պատկանում այն համաձուլվածքները (օրինակ, ինվար, էլինվար, մանգանին, կոնստանտան), որոնց ֆիզիկական պարամետրերը համարյա չեն փոխվում ջերմաստիճանի, մագնիսական և էլեկտրական դաշտերի, մեխանիկական բեռնվածքի փոփոխության դեպքում: Գործնական կարևոր նշանակություն ունեն նաև այն համաձուլվածքները (օրինակ, պերմալոյ, ալյումել, մագնիսաստրիկցիոն նյութեր), որոնց ֆիզիկական պարամետրերը, ընդհակառակը, արտաքին պայմանների փոփոխության դեպքում էապես փոխվում են: Ճ. հ. են նաև գերհաղորդականությամբ օժտված համաձուլվածքները: Ճ. հ. կիրառվում են ճշգրիտ սարքեր, ժամացույցների դետալներ, երկարության չափի, կամերտոնների ստուգանմուշներ պատրաստելու համար:

**ՃՇԳՐԻՏ ՀԱՍՏՈՑՆԵՐ**, բարձր ճշգրտությամբ դետալներ մշակող *մետաղահատ հաստոցներ*: Ճ. հ. են հղկիչ, ատամնաֆրեզիչ, գայլիկոնիչ-ներտաշիչ, խառատային հաստոցները: Ըստ ճշգրտության



Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանի հատուկ բարձր ճշգրտության 16C04A հաստոցը

դասի լինում են՝ բարձրացված ճշգրտության, բարձր ճշգրտության, հատուկ բարձր ճշգրտության (նկ.) և հատուկ ճշգրիտ: Ճ. հ-ով մշակումն ապահովվում է երկրաչափական ճիշտ ձևի մակերևույթներով, առանցքների ճշգրիտ տարածական դիրքով և փոքր խորդուբորդություններով դետալների ստացում: Բարձր ճշգրտություն ապահովելու պայմաններն են՝ բարձրացված ճշգրտությամբ պատրաստված դետալների և հանգույցների, ճըշգրիտ և գերճշգրիտ սահքի առանցքակալների, ինչպես նաև հիդրոդինամիկական և հիդրոստատիկական առանցքակալների, մատուցման զգայուն մեխանիզմների կիրառում, ջերմային ձևափոխությունների և տատանումների պակասեցում, հանգույցների կոշտության մեծացում են: Ճ. հ-ի զարգացման տենդենցներն են՝ անվանակարգի և տիպաչափի ընդարձակում, թվային ծրագրային կառավարմամբ Ճ. հ-ի յուրացում և հաստոցների հուսալիության բարձրացում:

Հայկ. ՍՍՀ-ում Ճ. հ. արտադրում են Երևանի ֆրեզերային հաստոցների, Լենինականի հղկիչ հաստոցների և Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանները:

**ՃՇԳՐԻՏ ՎԵՐԻՆ ԵՎ ՍՏՈՐԻՆ ԿՈՊԱՐ**, ճշգրիտ վերին և ստորին եզր, թվային բազմության բնութագրիչներ: Իրական թվերի ոչ դատարկ E բազմության ճշգրիտ վերին կոպարը (supE, լատ. supremum — ամենաբարձր) ամենափոքրն է բոլոր այն b թվերից, որոնք մեծ են (կամ հավասար) E-ի բոլոր տարրերից. $\sup E = b$, եթե 1. $x \leqslant b$ E-ի ցանկացած x-ի համար, 2. ցանկացած $b'$-ի ($b'<b$) համար կա մի $x'$ E-ից, որ $x'>b'$: Համանունորեն սահմանվում է ճշգրիտ ստորին կոպարը (inf E լատ. infimum — ամենացածր) որպես մի այնպիսի a թիվ, որ $x \geqslant a$ E-ի ցանկացած x-ի համար և ցանկացած $a'$-ի ($a'>a$) համար կա մի $x'$ E-ից, որ $x'<a'$:

Եթե բազմությունը սահմանափակ է վերևից (ներքևից), ապա այն ունի ճշգրիտ վերին (ստորին) կոպար:

Օրինակներ. $\sup[0,1)=\sup[0,1]=1$, $\inf(0,1)=0$, $\sup\{1,2,5\}=5$, $\inf\{1,2,5\}=1$:

**ՃՇԳՐԻՏ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՔԱՐԵՐԻ ԳՈՐԾԱՐԱՆ** Նոր Հաճընի, ՍՍՀՄ սարքաշինական արդյունաբերության ձեռնարկություն: Կազմակերպվել է 1958-ին՝ ՀՍՍՀ Արզնիի ՀԷԿ-ի շինարարության նորոգման արհեստանոցի բազայի վրա: Թողարկում է մոտ 80 տեսակ արտադրանք՝ հաստոցներ, սարքեր, տեխ. քարեր ևն: Սերիական արտադրությունն սկսել է 1960-ից: 1978-ին, 1959-ի համեմատ, արտադրության ծավալն աճել է 55 անգամ: Կոոպերացված արտադրական կապերի մեջ է Ռիգայի, Մոսկվայի, Լենինգրադի և այլ քաղաքների մոտ 250 գործարանի, իսկ գիտատեխնիկական խնդիրներով՝ ՍՍՀՄ 64 ԳՀԻ-ի հետ: Արտադրանքն իրացվում է ՍՍՀՄ-ում և արտահանվում 14 երկիր՝ ԳԴՀ, Հունգարիա, Չեխոսլովակիա, ԳՖՀ, Անգլիա, Իտալիա: 1972-ին պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով:

**ՃՇԳՐՏՈՒԹՅԱՆ ԴԱՍԵՐ** մեքենաշինության մեջ, շինվածքի պատրաստման ճշգրտության բնութագիր. որոշվում է ստանդարտներում նշված թույլտվածքների (տես *Թույլտվածքներ և նստեցվածքներ*) արժեքներով: Ճ. դ. կարող են սահմանված լինել ինչպես շինվածքի առանձին երկրաչափական պարամետրերի (օրինակ, գծային չափերի, անկյունների ևն), այնպես էլ ամբողջ շինվածքի (օրինակ, *մետաղահատ հաստոցների*, առանցքակալների ևն) համար: Ճ. դ. նշանակվում են հերթական համարներով: Օրինակ, ճյուղային ստանդարտների թույլտվածքների համակարգում 1—50 մմ տրամագծով շինվածքների համար սահմանված են 10 Ճ. դ.՝ 1, 2, 2a, 3, 3a, 4, 5, 7, 8, 9 (նոմինալ չափի թույլտվածքի աճի հերթականությամբ): Սահմանված են նաև 1-ից ավելի Ճ. դ., որոնք նշանակվում են (թույլտվածքի նվազման հերթականությամբ) 09, 08,...,02 և նախատեսված են չափիչ միջոցների (տրամաչափ, ծայրաչափ) և հատուկ ճշգրիտ դետալների (ճըշգրիտ առանցքակալների նստեցվածքներ) միացումների համար:

Ստանդարտների միջազգային կազմակերպությունում կան 18 հիմնական Ճ. դ., որոնք նշանակվում են 01, 0, 1, 2,..., 16:

**ՃՇԳՐՏՈՒԹՅՈՒՆ** ավտոմատ կառավարման համակարգի, *ավտոմատ կառավարման* համակարգերի (ԱԿՀ) կարևոր բնութագիր. որոշում է իրական կառավարվող պրոցեսի (ԿՊ) մոտեցման աստիճանը պահանջված պրոցեսին: ԿՊ-ի շեղումը պահանջվածից պայմանավորված է կառավարման օբյեկտի և ԱԿՀ-ի դինամիկական հատկություններով, ԱԿՀ-ի մեջ մտնող չափիչ և գործադիր սարքերի սխալանքներով, որոշ տարրերի ներքին աղմուկներով և արտաքին խանգարումներով: Այդ շեղումն առաջանում է սիստեմատիկ և պատահական սխալանքներից: Սիստեմատիկ սխալանքը ԿՊ-ի պատահական շեղման *մաթեմատիկական սպասումն* է: Պատահական սխալանքը սովորաբար բնութագրվում է *դիսպերսիայով* կամ միջին քառակուսային շեղմամբ (միաչափ ԿՊ-ի դեպքում) և կամ կոռելյացիոն մատրիցով (բազմաչափ ԿՊ-ի դեպքում): Սիստեմատիկ և պատահական սխալանքների միջև եղած առնչությունը որոշվում է համակարգի թողունակության շերտով (մուտքի ազդանշանի տատանումների այն հաճախականությունների տիրույթով, որոնց արձագանքում է համակարգը): Թողունակության շերտի ընդլայնումով համակարգը դառնում է պակաս իներցիոն, և սիստեմատիկ սխալանքը փոքրանում է, սակայն մեծանում է պատահական սխալանքի դիսպերսիան:

Ճ. սերտորեն կապված է ԱԿՀ-ի մեկ այլ կարևոր բնութագրի՝ զգայունության հետ (տես *Զգայունություն* ավտոմատ կառավարման տեսության մեջ):

**«ՃՇՄԱՐԻՏ ՍՈՑԻԱԼԻԶՄ»**, «իսկական սոցիալիզմ», «գերմանական սոցիալիզմ», մանրբուրժուական սոցիալիզմի տարատեսակ: Տարածվել է 1844—47-ին, գլխավորապես Գերմանիայում: Արտահայտել է դասակարգային հակասությունների խորացումից վախեցած գերմ. քաղքենիության տրամադրությունները: «Ճ. ս»-ի ներկայացուցիչները (Մ. Հեսս, Հ. Պյուտման, Հ. Կրիգե) հանդես են եկել նախակապիտալիստական կարգերի, մասնավորապես արհեստավորական համքարականության իդեալականացմամբ, տարածել են խոշոր կապիտալիստական արդյունաբերության շրջանցմամբ Գերմանիայում սոցիալիստական հասարակարգին անցման հնարավորության պատրանքը, հակադրվել են պայքարի հեղափոխական ձևերին և քարոզել ծայրահեղ նացիոնալիզմ. «Գերմանական գաղափարախոսություն», «Կոմունիստական կուսակցության մանիֆեստը», «Շրջաբերական Կրիգեի դեմ» և այլ երկերում Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը քննադատել են «Ճ. ս.», ցույց տվել նրա գաղափարական սնանկությունը և հետադիմական բնույթը: Վ. Ի. Լենինը «ճշմարիտ սոցիալիստներին» բնութագրել է որպես ոչ-հեղափոխականներ, «...իմաստակային դատողությունների և վերացական քարոզի հերոսներ» (Երկ., հ. 10, էջ 592):

**ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՉԱՓԱՆԻՇ**, տես *Ճըշմարտություն*:

**ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆ**, 1. *գիտելիքի* (պատկերացումների, դատողությունների, հիպոթեզների, տեսությունների) հատկանիշ. գիտելիքը համարվում է ճշմարիտ, եթե այն արտահայտում է օբյեկտիվ իրականությունը այնպես, ինչպես այն կա անկախ գիտակցությունից: Իդեալիստական փիլ. համակարգերում Ճ. համարվել է իդեալական օբյեկտների հավերժ ու անփոփոխ հատկություն (Պլատոն), բանականության բնածին հատկանիշ (Ռ. Դեկարտ) կամ մտքի ապրիորի ձև (Ի. Կանտ): Հեգելը տվել է Ճ-յան դիալեկտիկական ըմբռնումը՝ դիտելով այն որպես գիտելիքի ծավալման պրոցես: Արդի բուրժ. փիլիսոփայությունը մերժում է Ճ-յան օբյեկտիվությունը՝ այն հանգեցնելով անձնավորության հոգեբանական վիճակին (էկզիստենցիալիզմ), գիտության դրույթների և զգայական փորձի համապատասխանությանը (նեոպոզիտիվիզմ): Պրագմատիզմը ճշմարիտ է համարում այն գի-

տելիքը, որն «աշխատում» է, ապահովում է հաջողություն: Այսպիսով Ճ. կախման մեջ է դրվում նրա ճանաչման ուղիներից ու աստիճաններից:

Ըստ մարքսիստական փիլիսոփայության Ճ. բովանդակությամբ օբյեկտիվ է, թեև իր ձևով սուբյեկտիվ, որքանով որ մարդկային գիտելիքի հատկանիշ է: Օբյեկտիվ Ճ-յան ճանաչողության պրոցեսը դրսևորվում է բացարձակ և հարաբերական Ճ-ների փոխհարաբերության ձևով: Ճ. յուրաքանչյուր կոնկրետ ձևի մեջ հարաբերական է, արտացոլում է օբյեկտը որոշակի սահմաններում, որոշակի կողմով միայն, որքանով որ ամեն մի գիտելիք սահմանափակված է պատմական որոշակի պայմաններով: Հարաբերական Ճ-յան բացարձակացումը, հավերժացումը ծնում է մոլորություն: Սակայն, որքանով Ճ. օբյեկտիվ է՝ այն բացարձակ է, պարունակում է այնպիսի կողմեր, որոնք երբեք չեն կարող հերքվել: Այսպիսով, բացարձակ Ճ. հարաբերական Ճ-յան ծավալման անվերջ պրոցես է, որի ընթացքում միտքը անընդհատ մոտենում է օբյեկտիվ աշխարհին՝ երբեք չսպառելով այն: Ընդսմին, Ճ. միշտ կոնկրետ է, որն ապահովվում է ուսումնասիրվող օբյեկտի կոնկրետ պայմանները, աշխարհի հետ նրա ունեցած հիմնական էական կապերը հաշվի առնելու միջոցով: Ճ-յան չափանիշը ինքնին վերցրած մտածողության մեջ չէ, ոչ էլ ճանաչող սուբյեկտից անկախ իրականության մեջ: Այդ չափանիշը մարդկային հասարակական-պատմական *պրակտիկան* է: Պրակտիկայից դուրս գիտելիքի Ճ-յան հարցը սխոլաստիկական հարց է:

2. **Ձևական տրամաբանության մեջ** ասույթի գնահատական՝ պայմանավորված նրա ձևական տրամաբանական կառուցվածքով և այն տրամաբանական օրենքներով, որոնց շրջանակներում քննարկվում է ասույթը: Այս իմաստով օգտագործվում է նաև «տրամաբանական Ճ.» տերմինը՝ հակադրելով այն փաստական Ճ-յանը: Ասույթը համարվում է ճշմարիտ, եթե նրա ձևը համընկնում է կամ որոշ թույլատրելի գործողություններից հետո կարող է համընկնել տրամաբանական օրենքի հետ: Օրինակ, «Քանի որ բոլոր հույները սևամորթ են, իսկ Նապոլեոնը հույն է, ուրեմն Նապոլեոնը սևամորթ է» ասույթը պրեդիկատների հաշվի որոշակի օրենքներով, անկախ բովանդակությունից, ճշմարիտ է: Այնինչ նույն ձևով չի կարելի հիմնավորել «Արարատը հայկական լեռ է» ասույթի (փաստական) Ճ., որը պայմանավորված է ոչ թե տրամաբանական օրենքով, այլ պատմական փաստով:

Տրամաբանական Ճ-յան խստիվ տեսություն հնարավոր եղավ կառուցել միայն մաթ. տրամաբանության և տրամաբանական իմաստաբանության մեթոդների ներգրավման շնորհիվ (Գ. Ֆրեգե, Ռ. Կառնապ և ուրիշներ): Այդուհանդերձ, ինչպես փաստական Ճ-ից տրամաբանական Ճ-յան խստիվ սահմանազատման, այնպես էլ նրա հիմքերի բացահայտման հարցը մինչև օրս մնում է պրոբլեմատիկ՝ պայմանավորված ակտուալ անվերջության հետ առնչվող իմացաբանական-տրամաբանական բնույթի դժվարություններով:

*Գրկ.* Լենին Վ. Ի., Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, Երկ., հ. 14: Витгенштейн Л., Логико-философский трактат, М., 1958; Карнап Р., Значение и необходимость, М., 1959; Курсанов Г. А., Ленинская теория истины и кризис буржуазных воззрений, М., 1977; Чудинов Э. М., Природа научной истины, М., 1977.

*Ս. Ավետիսյան*

**ՃՈՂՎԱԾՔ**, ներքին օրգանների կամ խորը հյուսվածքների արտացցվելը խոռոչներից դեպի ենթամաշկ կամ միջմկանային բջջանք՝ առանց ծածկույթները վնասելու: Ըստ տեղադրության լինում են որովայնային, ուղեղային և մկանային Ճ-ներ: Ըստ ծագման՝ բնածին և ձեռքբերովի (ետվիրահատական, ետվնասվածքային) են: Առավել հաճախ հանդիպում է **որովայնի** Ճ., որն ըստ ելքի լինում է արտաքին (աճուկային, ազդրային, պորտային, որովայնի սպիտակ գծի և ուղիղ մկանների ջլային խտրոցների, նստատեղի, միջնորմերի) և ներքին (ստոծանիական,




*1. Ճողվածքի ետազնաց օղակում (ճմլում). ճողվածքապարկը պարունակում է բարակ աղիքի գալարներ, 2. ճողվածքի առպատային օղակում*

ճարպոնային): Ճ-ի առաջացմանը նպաստում են որովայնի պատի անատոմիական կառուցվածքի առանձնահատկությունները և զարգացման արատները: Այդ պատճառների զուգակցումից որովայնի պատի թույլ հատվածի կամ սպիների շրջանում (ճողվածքային օղ) առպատային որովայնամիզը դուրս է ցցվում և առաջացնում ճողվածքապարկ: Վերջինիս մեջ են անցնում որովայնի խոռոչի այս կամ այն օրգանները (բարակ աղիք, ճարպոն): Ետորովայնամզային տարածությունում գտնըվող կամ որովայնամզով մասամբ ծածկըված օրգանների Ճ-ի դեպքում ճողվածքապարկը բացակայում է: Արտաքին Ճ-ները հայտնաբերվում են չփոփոխված մաշկով պատված արտացցվածքի առկայությամբ: Պառկած վիճակում ճողվածքային արտացցվածքը հաճախ ինքնուրույն կամ թեթևակի սեղմելիս անհետանում է՝ մտնելով որովայնի խոռոչ: Ճ. աստիճանաբար մեծանում է և հասնում բավականին մեծ չափերի: Ճողվածքապարկում օրգանների երկարատև գտնվելը պատճառ է դառնում կպումների առաջացման, որը խոչընդոտում է Ճ-ի ուղղմանը, գոյանում է չուղղըվող Ճ. (այսինքն՝ Ճ-ի պարունակությունը չի անցնում որովայնի խոռոչ՝ հիվանդի դիրքը փոխելիս): Ծանր բարդություն է Ճ-ի ճմլումը: Հազալիս, որովայնը պիրկ ձգելիս կամ ֆիզիկական լարումների դեպքում աղիքային հանգույցները կարող են սահել ճողվածքապարկի մեջ և ճմլվել ճողվածքային օղում: Այդպիսի դեպքում Ճ-ի ուղղումը կարող է հանգեցնել լուրջ բարդությունների, և հարկավոր է անհապաղ վիրաբուժական միջամտություն:

**Բուժումը** միայն վիրաբուժական: Ամրակապերը (բանդաժները) ժամանակավորապես պահպանում են, սակայն չեն կանխում ճմլումը: **Կանխարգելումը**. բուժական ֆիզկուլտուրա, քրոնիկական հազի, փորկապության, հյուծման, ճարպակալման ժամանակին բուժում:

*Ի. Գևորգյան*

**ՃՈՃԱՆԱԿ**, պինդ մարմին, որը կիրառված ուժերի ազդեցությամբ տատանվում է անշարժ կետի կամ առանցքի նկատմամբ: Պարզագույն Ճ. բաղկացած է C ծանր ոչ մեծ բեռից, որը կախված է l երկարության թելից կամ թեթև ձողից: Եթե թելը համարենք չձգվող և արհամարհենք բեռի չափսերը թելի երկարության, իսկ թելի զանգվածը՝ բեռի զանգվածի համեմատությամբ, ապա թելից կախված բեռը կարելի է դիտել որպես O կետից l անփոփոխ հեռավորության վրա գտնվող նյութական կետ (նկ. ա): Այդպիսի Ճ. կոչվում է **մաթեմատիկական ճոճանակ**: Եթե $C_0$ հավասարակշռության դիրքից շեղված Ճ. բաց թողնենք առանց սկզբնական արագության կամ C կետին հաղորդենք OC-ին ուղղահայաց և սկզբնական շեղման հարթության մեջ գտնվող արագություն, ապա Ճ. կտատանվի ուղղաձիգ հարթության մեջ՝ շրջանագծի աղեղով (հարթ կամ շրջանային մաթ. Ճ.): Ընդհանուր դեպքում Ճ-ի տատանումները ներդաշնակ չեն: T պարբերությունը կախված է ամպլիտուդից: Ճ-ի փոքր φ շեղման անկյունների դեպքում տատանումները կարելի է համարել ներդաշնակ՝ $T=2\pi\sqrt{l/g}$ պարբերությամբ, որտեղ g-ն ազատ անկման արագացումն է: Հաղորդվող արագության ուղղությունից կախված Ճ-ները կարող են լինել գնդային, կոնային, ցիկլոիդային:




**Ճոճանակներ**. *ա. շրջանային մաթեմատիկական ճոճանակ, բ. ֆիզիկական ճոճանակ*

Եթե տատանվող մարմինը չի կարելի դիտել որպես նյութական կետ, Ճ. կոչվում է **ֆիզիկական**: Ֆիզիկական Ճ. սովորաբար անվանում են ծանրության ուժի ազդեցությամբ կախման հորիզոնական առանցքի շուրջը տատանվող պինդ մարմինը (նկ. բ): Շեղման փոքր φ անկյունների դեպքում Ճ-ի տատանումները նույնպես կարելի է համարել ներդաշնակ՝ $T=2\pi\sqrt{I/Mgl}$ պարբերությամբ, որտեղ I-ն Ճ-ի իներցիայի մոմենտն է կախման առանցքի նկատմամբ, l-ը՝ C ծանրության կենտրոնի հեռավորությունը O կախման առանցքից, M-ը՝ Ճ-ի

զանգվածը: Հետևաբար, ֆիզիկական Ճ-ի տատանումների պարբերությունը համընկնում է այնպիսի մաթ. Ճ-ի տատանումների պարբերության հետ, որի երկարությունը $l_0=I/Ml$: Այդ երկարությունը կոչվում է ֆիզիկական Ճ-ի բերված երկարություն: Ճ-ի հատկությունները լայնորեն կիրառվում են ժամացույցներում, *գիրոսկոպային սարքերում*, շարժվող մարմինների արագացումների, երկրակեղևի տատանումների որոշման սարքերում և այլուր: Տես նաև *Ֆուկոյի ճոճանակ*:

**ՃՈՃԿԱՆ**, գյուղ Հայկական ՍՍՀ Թումանյանի շրջանում, Վիրահայոց լեռնաշղթայի հարավահայաց լանջին, Դեբեդ գետի բարձրադիր ձախ ափին, շրջկենտրոնից 30 *կմ* հարավ-արևելք: Պտղաբուծական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև բանջարաբուծությամբ և անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, 2 մանկապարտեզ, ամբուլատորիա: Գյուղում և

Ճոճկան

շրջակայքում պահպանվել են վանքեր (Նահատակ, 1621, Շփրթնավանք, XVII դ.), գյուղատեղիներ (XVII դ.), որմնափակ խաչարձան (XIII դ.), գերեզմանոց խաչարձաններով (XIII—XVII դդ.):

**ՃՈՃՀԱՎԵՐ** (Remizinae), երաշտահավերի ընտանիքի թռչունների ենթաընտանիք. ՍՍՀՄ-ում տարածված է 1 տեսակ՝ սովորական ճոճհավը (Remiz pendulinus), որը փոքրիկ թռչուն է, մարմնի երկարությունը՝ մինչև 11 *սմ*: Փետուրները շագանակագույն են կամ դեղնամոխրագույն: Բույնը պարկանման է, կողմնային անցքով և կախված է լինում ջրերի ափին աճող ծառերի ճյուղերից: Դնում է 4—8 ձու, թխսում է էգը (13—14 օր): Ձագերը բնում մնում են 16—18 օր: Հայաստանում տարածված է Արաքսի հովտում և նրա մեջ թափվող գետերի երկայնքով բարձրանում է լեռները (մինչև 1700 *մ*): Սնվում է միջատներով, սարդերով, թրթուրներով, մանր սերմերով:

**ՃՈՆՔԱՁԵ** Դանիել Գեորգիի [1830, գ. Ղվավիփ (Դուշեթի շրջանում)—1860, Թիֆլիս], վրացի գրող: Ստավրոպոլի հոգևոր ուսումնարանում (1851-ից) և Թիֆլիսի հոգևոր ճեմարանում (1855-ից) դասավանդել է օսերեն: Ռուս. գիտությունների ակադեմիայի պատվերով նյութեր է հավաքել ռուս-օսական բառարանի համար: Ճ-ի միակ գեղարվեստական ստեղծագործությունը «Սուրամի ամրոցը» (1859) վիպակն է, որի հիմքում ընկած է ամրոց կառուցելիս կենդանի մարդուն պատի մեջ շարելու առասպելը: Ճ. խարազանել է ճորտատիրական կարգերը, միապետությունը: Վիպակը դեմոկրատական ոգով գրված առաջին ստեղծագործությունն է վրաց գրականության մեջ:

*Մ. Խուցիշվիլի*

**ՃՈՊԱՆ**, պողպատե լարից, բուսական, սինթետիկ կամ հանքային մանրաթելերի մանվածքից պատրաստված ճկուն շինվածք: Ըստ պատրաստման եղանակի Ճ-ները լինում են՝ ոլորած (գալարուն), չոլորած, հյուսած: Մ ե տ ա ղ ա կ ա ն (պողպատե) Ճ-ները պատրաստում են 0,5—2 *մմ* տրամագծի լարերից՝ շրջանաձև (կլոր), վեցանկյուն, ուղղանկյուն, քառակուսի լայնական հատվածքով (նկ. 1): Ոլորած կլոր Ճ. կարող է ունենալ միակի պարուրաձև, կրկնակի (ճոպանային), եռակի (կաբելային) հյուսվածք: Չոլորած Ճ-ները կազմված են պողպատե լարերի խիտ դասավորված խմբերից կամ պարուրաձև փաթույթով (հաճախ նաև սեղմակներով) շրջասեղմված պարուրաձև Ճ-ներից (նկ. 2): Հյուսած Ճ-ները պատրաստում են զույգ թվով (սովորաբար 4) միահյուսված փնջերից (նկ. 3): Ո չ մ ե տ ա ղ ա կ ա ն Ճ-ները պատրաստում են կանեփի, բամբակի թելերից, ասբեստի և արհեստական մանրաթելերից:

Նկ. 1. տարբեր տեսակի ճոպանների լայնական հատվածքը. *ա*. պարուրաձև բաց, *բ*. պարուրաձև փակ, *գ*. մանրաթելային միջուկով կրկնակի հյուսվածքի, *դ*. մետաղե միջուկով կրկնակի հյուսվածքի, *ե*. եռակի կաբելային հյուսվածքի, *զ*. ձևավոր օվալահյուս, *է*. եռանիստահյուս, *ը*. հարթահյուս, *թ*. համակցված, *ժ*. հարթ

Նկ. 2. չոլորած ճոպան փաթույթով

Նկ. 3. հյուսած մետաղե ճոպան

**ՃՈՊԱՆՈՒՂԻ**, բեռների և ուղևորների փոխադրման համար նախատեսված կառույց, որում վագոնիկների տեղափոխման համար օգտագործվում է հենարանների միջև ձգված ճոպանը: Ըստ նշանակման Ճ-ները լինում են բեռնատար, մարդատար և համակցված, ըստ կառուցվածքի՝ երկճոպան կամ միաճոպան՝ վագոնիկների օղապտույտ կամ ճոճանակային շարժումով: Կախովի Ճ-ներից բացի մշակվում են նաև վերգետնյա Ճ-ներ՝ ճոպանային ամբարձիչներ: Դրանց օգնությամբ բեռնված ավտոմեքենաները կարելի է փոխադրել մինչև 45° թեքությամբ վայրերով, նավերն անցկացնել ամբարտակների վրայով:

**ՃՈՐԱ ՊԱՀԱԿ**, Ճ ո ր ա յ ղ ո ւ ռ, Դ ե ր բ ե ն դ ի ա ն ց ք, Կ ա ս պ ի ց դ ո ւ ռ, անցք Կասպից ծովի և Կովկասյան լեռնաշղթայի արևելյան վերջավորության միջև: Ճ. պ. բնականից մի հարթավայրային նեղ շերտ է, որը Դերբենդ քաղաքի մոտ ավելի նեղանալով, վերածվում է անցքի: Դեռ հնագույն ժամանակներից Ճ. պ-ով Անդրկովկաս, Իրան և Առաջավոր Ասիայի այլ երկրներ էին թափանցում Արևելաեվրոպական հարթավայրի հվ-ում տարբեր ժամանակներում հաստատված ժողովուրդները (կիմերներ, սկյութներ, հոներ ևն), որոնցից պաշտպանվելու համար, մ. թ. I հազարամյակի կեսերին Ճ. պ-ում կառուցում են ամրություններ և մի փոքրիկ բերդաքաղաք՝ դարձյալ Ճորա անունով: Այդ ամրությունների համալիրը, որտեղ Սասանյանների օրոք հաստատված էր մարդաշատ կայազոր, ստացավ Ճ. պ. անունը: Պատմագիրների հիշատակության համաձայն, V—VII դդ. Ճ. պ-ում կայազորային ծառայություն էր կատարում հայկ. զորագունդը, որին վարձատրում էին Իրանը և Բյուզանդիան: Հետագա ժամանակներում, չվստահելով միայն ամրություններին (պարսպապատերին, աշտարակներին)՝ Ճ. պ-ի անցքը

Ծաղկաձորի ճոպանուղին

փակել էին երկաթե դռնով: Տես նաև *Դերբենդ*: *Թ. Հակոբյան*

**ՃՈՐՈԽ** (Ակամսիս), գետ Հայկական լեռնաշխարհում՝ Թուրքիայում և ՍՍՀՄ-ում: Երկարությունը 438 *կմ* է (26 *կմ* ՍՍՀՄ սահմաններում), ավազանը՝ 22 հզ. *կմ*²: Սկիզբ է առնում Ճորոխի լեռնաշղթայի Չորմայրի (Մեսչիտ, 3255 *մ*) լեռնազագաթի հս-արմ. լանջից, մոտ 3000 *մ* բարձրությունից: Հոսում է Լազիստանի և Ճորոխի լեռնաշղթաների միջլեռնային տեկտոնական իջվածքով, կտրում Պոնտական լեռնաշղթան և Բաթում քաղաքի մոտ թափվում Սև ծովը: Գետաբերանային մասում բաժանվում է բազուկների: Գլխավոր վտակներն են Օլթին և Աջարիս Ծղալին: Սնումը խառն է, հորդացումը՝ գարնանն ու ամռանը: Տարեկան միջին ծախսը 285 *մ*³/*վրկ* է: Օգտագործվում է ոռոգման և լաստառաքման համար: Թորթում գետի վրա կա (Ճ-ի ավազան) 50 *մ* բարձրության ջրվեժ:

**ՃՈՐՏ**, ֆեոդալից անձնապես կախյալ և նրա հողին ամրացված իրավազուրկ գյուղացի, որը պարտավոր էր անվճար աշխատել ֆեոդալի համար, կատարել բազմապիսի պարհակներ: Տես *Գյուղացիություն*, *Ճորտատիրական իրավունք*:

**ՃՈՐՏԱՅԻՆ ԱՇԽԱՏԱՆՔ**, տես *Ֆեոդալիզմ*:

**ՃՈՐՏԱՏԻՐԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔ**, ֆեոդալական պետության իրավական նորմերի համակարգ, որով կարգավորվել են կալվածատերերի և նրանցից անձնական կախման մեջ գտնվող գյուղացիների հարաբերությունները: Ճ. ի. սահմանել և ամրապնդել է ֆեոդալիզմի ժամանակ գյուղացիական կախվածության առավել լրիվ և դաժան ձևը: «Ճորտատիրական իրավունքի հիմնական հատկանիշն այն է, որ գյուղացիությունը... համարվում էր հողին ամրացված, այստեղից էլ առաջացել է հենց այդ՝ ճորտատիրական իրավունքի հասկացողությունը» (Լենին Վ. Ի., Երկ., հ. 29, էջ 592—593): *Ճորտ* գյուղացին իրավունք չուներ հեռանալու իր տիրոջից, պարտավոր էր նրա համար կատարել *կոռ*, բնամթերքով կամ դրամով վճարել *բահրա*: Նրանք, մյուս գյուղացիների նման, պետք է կատարեին նաև պետ. պարհակային պարտավորություն՝ *բեգար*: Ճ. ի. օրինականացնում էր գյուղացու նկատմամբ կիրառվող ոչ միայն տնտ., այլև արտատնտեսական (բռնի) ճնշումը: Արտատնտեսական հարկադրանքի ձևերն ու չափերը տարբեր էին, սկսած լրիվ ճորտացումից (որը քիչ էր տարբերվում ստրկականից), վերջացրած գյուղացիների դասային անիրավահավասարությամբ՝ այս կամ այն երկրում ֆեոդալիզմի զարգացման պայմաններին համապատասխան: Ըստ Ճ. ի-ի, կալվածատերը իր ճորտի նկատմամբ ուներ ոչ լրիվ սեփականության իրավունք՝ նրան կարող էր վաճառել (հողի հետ միասին կամ առանց հողի), նվիրաբերել, ամուսնացող դստեր օժիտի մեջ մտցնել, ծեծել, աքսորել, բայց սպանելու իրավունք չուներ: Ճ. ի. ամենուրեք ձևավորվել է ֆեոդալական հասարակական-տնտեսական կարգերի առաջացման հետ միասին և հարատևել մինչև կապիտալիստական արտադրաեղանակի ծագումը: Այն ենթադրում էր բավականին ուժեղ պետ. իշխանության առկայությունը, որը պետք է ապահովեր նրա հիմնական նորմերի իրականացումը: Արևմտյան Եվրոպայում VII—IX դդ. ճորտերն իրենց տերերից ունեին անձնական, դատական և հողային կախվածություն: Բացառություն էին կազմում պալատական գյուղացիներն ու ստրուկները, սաժենահաշվով աշխատողները, որոնք հողին կամ պարոնին իրավաբանորեն ամրացված չէին: XIII—XIV դդ., ապրանքադրամական հարաբերությունների զարգացման հետ, ճորտատիրական շահագործման նախկին՝ գյուղացուն առավել կախվածության մեջ պահող ձևերին փոխարինեցին բնամթերային, դրամական ռենտայի ձևերը, թույլատրվեց գյուղացիների փրկագընմամբ արձակումը: X—XV դդ., Արևմտյան Եվրոպայում ճորտատիրական կախման որոշ տարրեր տարածվում էին առանձին կատեգորիայի գյուղացիների վրա (վիլլանները՝ Կենտրոնական Անգլիայում, ռեմենսները՝ Կատալոնիայում, Ֆրանսիայում և Իտալիայի հվ-ում, սերվները՝ Կենտրոնական և Հյուսիսային Իտալիայում ևն): Արևելյան և Կենտրոնական Եվրոպայում (այդ թվում՝ Ռուսաստանում) Ճ. ի. կազմեց սոցիալական հարաբերությունների կարևորագույն մասը: Գյուղատնտ. արտադրության վրա հիմնված ձեռնարկատիրական, կալվածատիրական տնտեսության զարգացումը, կոռային աշխատանքի արագ աճը և գյուղացիների բուրժ. շահագործմամբ շահագրգռված ազնվականության քաղ. իշխանության առկայությունը այդ երկրներում նպաստեցին, այսպես կոչված, «ճորտատիրական երկրորդ հրատարակության» տարածմանը: Արևելյան Գերմանիայում, Մերձբալթիկայում, Լեհաստանում, Չեխիայում, Հունգարիայում, Ռուսաստանում Ճ. ի. տարածվում էր գյուղացիության հիմնական մասի վրա: Գյուղացիները պարտավոր էին իրենց տերերի համար աշխատել շաբաթվա 6 օրը, զրկված էին սեփականատիրական, անձնական, քաղաքացիական իրավունքներից: Ճ. ի. հիշյալ երկրներում հարատևեց ֆեոդալական հետադիմության հաղթանակի հետևանքով՝ երկար ժամանակ խոչընդոտելով կապիտալիստական հարաբերությունների զարգացմանը և վերացվեց XVIII—XIX դդ. բարեփոխումների միջոցով:

Ռուսաստանում ճորտատիրությունն ու Ճ. ի. սկիզբ են առել XI դարից: Մինչև XV դ. ճորտատիրական շահագործման ենթարկվել են գյուղացիական որոշ խավեր՝ ճորտացված ստրուկներ (տառապյալներ), պարտքի դիմաց կոռային աշխատանք կատարողներ (զակուպներ, սմերդներ), այլ խավերից ելած իզգոյներ (տնանկներ) ևն: Սմերդի և խոլոպի (տես *Խոլոպներ*) գույքային ու անձնական իրավունքները սահմանափակված էին հավասարաչափ: Նրանց սպանելու համար սահմանվում էր միևնույն տուգանքը: XV դ. ճորտատիրությունը Ռուսաստանում ընդգրկեց ողջ գյուղացիությունը, ուժեղացավ հողի սեփականատիրոջից նրանց կախվածությունը (*Յուրիի օր*, հողատիրոջը վերադարձնելու վաղեմության ժամկետի սահմանում կամ ընդհանրապես վաղեմության վերացում ևն): 1861-ին ճորտատիրությունը Ռուսաստանում վերացվեց (տես *Գյուղացիական ռեֆորմ 1861*):

Հայաստանում Ճ. ի. ծագել է վաղ ֆեոդալիզմի շրջանում, հողի մասնավոր ֆեոդալական սեփականության առաջացման հետ: Կալվածատերերն իրենց են ենթարկել չքավոր գյուղացիներին, ստիպել նրանց կոռային աշխատանք կատարել և իրենց ճորտացված ստրուկներին՝ «երդումարդ»-ներին դարձրել ճորտ գյուղացիներ: Դվինի 648-ի եկեղեցական ժողովի (տես *Դվինի ժողովներ*) 9-րդ կանոնը վկայում է, որ «ազատք զիւրեանց զերդումարդ բաժանեն...»: Այսպես կարող էին վարվել ոչ միայն ստրուկների, այլև ճորտերի հետ: Ճ. ի. արտացոլվել է նաև Հայոց դատաստանագրքերում (Մխիթար Գոշի Դատաստանագիրք, 2-րդ մաս, հոդված 3, Սմբատ Սպարապետի Դատաստանագիրք, հոդված 118): Ճ. ի. ավելի մեծ թվով գյուղացիների վրա է տարածվել զարգացած ֆեոդալիզմի շրջանում, հատկապես Կիլիկիայի հայկ. պետությունում: Հատկանշական է, որ «պառիկոս»-ներին (ճորտերին) վերաբերող նշված հոդվածը (118) Սմբատ Սպարապետը գրի է առել ստրուկներին նվիրված 115—117 հոդվածներից անմիջապես հետո: Հայտնի է նաև, որ Ղազանխանի 1303-ի յառլեխով (հրովարտակ) Արևմտյան իլխանության (այդ թվում՝ Հայաստանի) գյուղացիները փաստորեն ամրացվել են հողին: Այդ օրենքով 30-ամյա վաղեմության ժամկետ է սահմանվել փախած գյուղացիներին բռնի նրանց տերերին վերադարձնելու մասին: Ճ. ի. դրանից հետո նույնպես դարեր շարունակ պահպանվել է զանազան դրսևորումներով: Արևելյան Հայաստանում Ճ. ի. վերացվել է 1870-ի գյուղացիական ռեֆորմով (տես *Գյուղացիական ռեֆորմ Հայաստանում 1870*), սակայն ճորտական աշխատանքի առանձին վերապրուկներ պահպանվեցին մինչև սովետական կարգերի հաստատումը: Տես նաև *Գյուղացիություն* հոդվածը:

*Գրկ.* Լենին Վ. Ի., Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում, Երկ., հ. 3: Նույնի, Ճորտատիրական տնտեսությունը գյուղում, Երկ., հ. 20: Մանանդյան Հ., Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, Ե., 1934: Սամուելյան Խ., Հին հայ իրավունքի պատմություն, հ. 1, Ե., 1939: Греков Б. Д., Крестьяне на Руси и древнейших времен до XVII в., 2 изд., кн. 1—2, М., 1952—54; Бессмертный Ю. Л., Северо-французский серваж, (К изучению общего и особенного в формах феодальной зависимости крестьян). в сб.: Средние века, М., 1971, в. 33; Кнапп Г. Освобождение крестьян и происхождение сельско-хозяйственных рабочих в старых провинциях Прусской монархии пер. с нем., СПБ, 1900. *Ա. Սուքիասյան*

**ՃՈՐՏԱՏԻՐՈՒԹՅՈՒՆ**, տես *Ֆեոդալիզմ*:

**ՃՉԱՆԱԿ**, հարվածային երաժշտական գործիք: Մի ծայրով երկու թելի վրա շարված փայտե թերթիկների (մինչև 20 հատ) հավաքակար: Օգտագործվում է ժող. երգերի և պարերի ռիթմիկ նվագակցման համար: Տարածված է տարբեր ժողովուրդների մոտ:

**ՃՊՈՒՌՆԵՐ** (Odonata), գիշատիչ միջատների կարգ: Մարմինը խոշոր է, աչքերը

գրավում են գրեթե ամբողջ գլուխը: Բերանը կրծող տիպի է, ունեն 2 զույգ ցանցաթևեր (10—94 *մմ*), երկար փորիկ (14—120 *մմ*): Ճ. ձվադրում են ջրում, հողում, ջրային բույսերի հյուսվածքներում: Զարգանում են ոչ լրիվ կերպարանափոխությամբ: Թրթուրները ևս գիշատիչ են, սնվում են ջրային միջատների թրթուրներով, երբեմն՝ հարձակվում մատղաշ ձկների վրա: Հասուն Ճ. արագաշարժ են, սնվում են միջատներով, ճանճերով, մոծակներով ևն, որոնց որսում են թռիչքի ժամանակ: Կարող են տարածել ընտանի թռչունների վտանգավոր հիվանդություն՝ պրոտոզոնիմոզ: Հայտնի է Ճ-ի շուրջ 4500 տեսակ՝ տարածված գլխավորապես արևադարձային և խոնավ մերձարևադարձային գոտիներում: ՍՍՀՄ-ում հանդիպում է 165 տեսակ, որից 52-ը՝ նաև ՀՍՍՀ-ում:

Պատկերազարդումը տես 9-րդ էջից առաջ՝ ներդիրում:

**«ՃՌԱՔԱՂ»**, բանասիրական, կրոնական երկշաբաթաթերթ, ապա՝ ամսագիր (1860-ից): Լույս է տեսել 1853—62-ին, Մոսկվայում: Խմբագիր-հրատարակիչներ՝ Մ. Մսերյան և Զ. Մսերյան: Հեռու 1860-ական թթ. հայ հասարակական կյանքի առաջադիմական իրադարձություններից, «Ճ.», լինելով կղերա-ֆեոդալական հոսանքի խոսափող, թշնամաբար է վերաբերվել «Հյուսիսափայլ»-ին և լեզվի, կրոնի ու եկեղեցու, լուսավորության հարցերում հակադրվել է նրան: Ջատագովելով կրոնական ճառեր ու քարոզներ, ծանոթացնելով հայ եկեղեցու ծեսերին ու ավանդություններին՝ ամսագիրը նպատակ ուներ հոգևոր դաստիարակություն տալ ընթերցողներին, «օժանդակել» ազգի լուսավորության գործին: Տպագրել է հատվածներ հայ մատենագիրների ու պատմիչների գործերից, պատմական ակնարկներ, զրույցներ, տեղեկություններ գիտական հայտնագործությունների մասին, նյութեր Ռուսաստանի պատմության վերաբերյալ: Գրական բաժինը ներկայացրել է Մսերյանների, Սեյադի (Պ. Մաղաքյան), Ե. Սահակյանի, Լազարյան ճեմարանի սաների բանաստեղծությունները: Ամսագրի լեզուն հիմնականում գրաբար էր:

*Մ. Մխիթարյան*

**ՃՌԻԿՆԵՐ** (Grylloidea), ուղղաթև միջատների կարգի վերնաընտանիք: Մարմինը գլանաձև է, երբեմն՝ գնդաձև, բեղիկները սովորաբար մարմնից երկար են: Որոշ տեսակների թևերը կարճացած են կամ անհետացած: Արուները վերնաթևերի վրա ունեն ձայնարձակ ապարատ և գիշերները «երգում» են: Լսողության օրգանները առջևի ոտքերի վրա են: Էգերը սովորաբար ունեն նիզակաձև ձվադիր. ձվադրում են հողում, մեկ տեսակը՝ բույսերի ցողուններում: Զարգանում են ոչ լրիվ կերպարանափոխությամբ, ձմեռում են և՛ թրթուրները, և՛ հասունները: Ընդգետնյա, գիշերային կենսակերպի միջատներ են, հանդիպում են ամենուր՝ դաշտերում, հողի ճեղքերում, քարերի տակ, տներում ևն: Հայտնի է Ճ-ի 2000 տեսակ, որից 50-ը՝ ՍՍՀՄ-ում, 16-ը՝ ՀՍՍՀ-ում: Ճ. ամենակեր են, առանձին տեսակներ վնաս են հասցնում բույսերին:

**ՃՌՃՌՈՒԿ** (Cerastium), մեխակազգիների ընտանիքի միամյա կամ բազմամյա բույսերի ցեղ: Խոտաբույսեր են, երբեմն՝ կիսաթփեր: Ծաղիկները սպիտակ են, 5 պսակաթերթիկներով՝ հավաքված հովանոցաձև ծաղկաբույլում, հազվադեպ միայնակ են: Պտուղը տուփիկ է: Հայտնի է շուրջ 100 տեսակ՝ տարածված համարյա ամբողջ երկրագնդում, առավելապես Եվրասիայում: ՍՍՀՄ-ում աճում է 50-ից ավելի տեսակ, ՀՍՍՀ-ում՝ 19: Որոշ տեսակներ (բիբերշտայնի, բրդոտ Ճ. ևն) մշակվում են որպես դեկորատիվ բույսեր:

**ՃՎԱՇՌՈՏ**, Ճ վ ա ր շ - ռ ո տ, գավառ Մեծ Հայքի Վասպուրական աշխարհում: Հիշատակվում է VII դ. «Աշխարհացոյց»-ում: Թովմա Արծրունու Պատմության մեջ հիշվում է Ճվաշ ձևով: Ենթադրաբար տեղադրվում է համանուն (այժմ՝ Ադ-չայ) գետի հովտում:

**ՃՏԱՀԱՆ ՄԵՔԵՆԱ**, ի ն կ ու բ ա տ ո ր (< լատ. incubo — այստեղ — ճտահանել), գյուղատնտեսական թռչունների արհեստական ճտահանումն իրագործող սարք: Պարզունակ Ճ. մ-ները՝ հատուկ շինություն, տաքացված տակառ, վառարան ևն, հայտնի են եղել արևադարձային երկրներում դեռևս մի քանի հզ. տարի առաջ: Եվրոպայում և ԱՄՆ-ում Ճ. մ-ները գործածել են XIX դարից: ՍՍՀՄ-ում դրա արտադրությունն սկսվել է 1928-ից:

Ճ. մ-ում ինկուբացիայի բոլոր պրոցեսները (օդի անհրաժեշտ ջերմաստիճանի ու խոնավության պահպանումը, օդափոխանակությունը, ձվերի շրջումը ևն) ավտոմատացված են: Կարող են աշխատել ամբողջ տարին: Ըստ կառուցվածքի բաժանվում են սենյակային, պահարանային և սեկցիոն տիպերի: Ս ե ն յ ա կ ա յ ի ն Ճ. մ. («Ռեկորդ-39», «Ռեկորդ-42») թերմոստատ արկղ է: Նախատեսված է հիմնականում հավերի, հնդկահավերի, խայտահավերի ձվերի ինկուբացիայի համար: Պ ա հ ա ր ա ն ա յ ի ն Ճ. մ. («Ունիվերսալ-45», «Ունիվերսալ-50») բաղկացած է ինկուբացիոն և ճտահանության ինքնուրույն սարքերից: Դրանցում կարելի է ինկուբացնել գյուղատնտ. բոլոր տեսակի թռչունների ձվերը: Ճ. մ-ները տեղադրում են *ինկուբատորա-թռչնաբուծական կայանների* ինկուբատորային բաժնում: ԱՄՆ-ում, Կանադայում, Մեծ Բրիտանիայում, Իտալիայում և այլուր տարածված են ս ե կ ց ի ո ն տիպի Ճ. մ-ները:

**ՃՐԱԳԱԽՈՏ** (Orobanche), ճրագախոտազգիների ընտանիքի միամյա կամ բազմամյա քլորոֆիլազուրկ խոտակերպ բույս: Ցողունի երկարությունը մոտ 50 *սմ* է: Արմատները էվոլյուցիայի ընթացքում ձևափոխվել են կարճ թելերի և ձեռք բերել բույս-տիրոջ արմատների մեջ թափանցելու ունակություն: Ծաղիկները հավաքված են հասկանման ծաղկաբույլերում, ունեն դեղնամանուշակագույն երանգ, փոշոտվում են միջատներով կամ ինքնափոշոտվող են: Պտուղը բազմասերմ (մինչև 2000 սերմ) տուփիկ է: Հայտնի է 13 ցեղ և 150 տեսակ (ՍՍՀՄ-ում՝ 80): Տարածված է բարեխառն և մերձարևադարձային գոտիներում: Տեսակների գերակշռող մասը վտանգավոր, մակաբույծ մոլախոտեր են: Առավել վնասակար են ա ր և ա ծ ա ղ կ ի, ճ յ ու ղ ա վ ո ր, կ ա ղ ա մ բ ի, ե գ ի պ տ ա կ ա ն, դ ե ղ ի ն կամ ս ռ վ ու յ տ ի Ճ-երը: Դրանք ախտահարում են արևածաղիկը, կտավատը, ծխախոտը, կաղամբը, լոլիկը, ձմերուկը, սեխը, դդումը, առվույտը ևն: Ճ. յուրացնում է բույսերի սննդանյութերը և ջուրը, թունավորում դրանք, որի հետևանքով շատերը ոչնչանում են: ՀՍՍՀ-ում (գլխավորապես նախալեռնային, լեռնատափաստանային և անտառային գոտիներում) տարածված են դեղին և ճյուղավոր Ճ-երը:

Պ ա յ ք ա ր ի մ ի ջ ո ց ն ե ր ը. իմուն սորտերի մշակում, ցանքաշրջանառությունում բույսերի հաջորդականության ճիշտ սահմանում (վարակի նկատմամբ զգայունակ կուլտուրաները պետք է մշակվեն 8-րդ կամ 9-րդ տարում), խորը (մինչև 20 *սմ*) վար, վարակված հողերում ոչ զգայունակ կուլտուրաների մշակում, հերբիցիդների կիրառում, բերքահավաքից հետո դաշտերում բույսերի մնացուկների այրում, կենսբ. պայքարի միջոցներ (սնկերի, ֆիտոմիզա ճանճի, սազերի օգնությամբ դաշտից Ճ-ի սերմերի հեռացում) ևն:

*Ն. Կարապետյան*

**ՃՈՒԼԱՐՏՅԱՆ** Սիմոն (20.10.1811, Կարին —14.2.1884, Վենետիկ), հայ բանահավաք, բանասեր: Մխիթարյան միաբանության ա դամ: Խմբագրել և հրատարակել է հայկ. («Առածք ազգայինք», 1880) և տաճկական (թուրք. «Տաճկական առածք», 1882) առած-ասացվածքների ժողովածուները: Հայկ. առածների ժողովածուն ներկայացնում է Կ. Պոլսի, Վանի, Ալաշկերտի, Կարնո, Ջուղայի, Երևանի, Թիֆլիսի, Ղրիմի, Տրանսիլվանիայի խոսվածքներով 4000 առած-ասացվածք, որոնք հեղինակի գրառումներն են, ինչպես նաև տպագիր այլ աղբյուրներից քաղած նյութեր (Անանիա վարդապետ, Մ. Միանսարյանց, Խ. Աբովյան, Խոջոյան): Ժողովածուն համառոտած 1888-ին ֆրանս. և անգլ. է թարգմանել Գևորգ Պայանը: Ճ-ի տաճկական առածների ժողովածուն գերազանցապես հեղինակի գրառումներն են՝ տպագրված հայատառ թուրքերենով (շուրջ 4500 գրառում):

*Ա. Նազինյան*

**ՃՈՂՈՒՐՅԱՆ** Հարություն Գրիգորի [24.10.1864, գ. Խաշթառակ (այժմ՝ ՀՍՍՀ Իջևանի շրջանում)—28.1.1938, գ. Խաշթառակ], հայ գյուղագիր: Ավարտել է Թիֆլիսի Ներսիսյան դպրոցը (1890): Դասավանդել է Գայանյան, Այգեպանական, Քաղաքային և այլ դպրոցներում: 1898-ին ձեռնադրվել է քահանա, 1923-ին թողել է քահանայությունը: 1925-ից կրկին ուսուցչություն է արել ծննդավայրում և Իջևանի այլ գյուղերում: Տպագրվել է 1892-ից «Նոր-Դար»-ում: Ամենավաղ գործը «Հովիվ Զատինի սերը» պատմվածքն է: 1895—96-ին «Մոռացված աշխարհ» խորագրով լույս են տեսել Ճ-ի պատմվածքների երեք ժողովածուները: Այնուհետև հրատարակվել են նրա «Աղա սուրբ Սարգիսը և Մալաք տատի հավատը» (1899), «Աղքատի հալը» (1902), «Գյուղի այրին» (1902) պատմվածքները, «Շիրինանց Նախշունը» (1911) վեպը:

1900-ական թթ. սկզբներին Ճ-ի ստեղծագործության մեջ տեղի են ունեցել խոր փոփոխություններ: Եթե դրանից առաջ Ճ. «ամենայն հավատարմությամբ արձանագրել է իր տեսածը, լսածը…», ապա այդ ժամանակ թեքվել է դեպի սոցիալ-նարոդնիկության գաղափարական կողմնորոշումները: Հայ գյուղագրական նշանավոր երկերից է «Չատոյի բախտի անիվը» (1908): Այս պատմվածքը գրելիս. 1905-ի հեղափոխությունը Ճ-ին պատկերացել է որպես «արդար դատաստանի» սկիզբ: 1909-ին ցարական գրաքննությունը բռնագրավել է պատմվածքի ամբողջ տպաքանակը և ոչնչացրել: Վերջին շուրջ երեք տասնամյակներում Ճ-ի գրած աչքի ընկնող գործը «Բատրակ Ոսկանը» պատմվածքըն է (1930):

Ճ. հավատացած է եղել, թե իբր գոյություն ունեցող սեփականատիրական կարգերում հնարավոր է ժողովրդի ծոցից ելած մտավորականների և կրթված հոգևորականների միջոցով լուսավորել գյուղը, վերացնել սոցիալական չարիքը: Այսօր նրա երկերն ուշագրավ են պատմական, ճանաչողական-փաստագրական տեսանկյունից:

*Երկ.* Մոռացված աշխարհ, Ե., 1968:

*Գրկ.* Դանիելյան Կ. Ա., Հայ գյուղագրությունը XIX դարում (1860—1890), Ե., 1973:

*Հ. Դավթյան*

**ՃՈՒՌԱԿՆԵՐ** (Accipitridae), գիշատիչ թռչունների ընտանիք: Մարմնի երկարությունը 28—115 *սմ* է, թևերը լայն են, կլորացած, ճանկերը՝ ուժեղ: Կտուցը կարթաձև է, վերնակտուցի եզրը չունի ատամնային ելուստ: Հայտնի է 205 տեսակ, տարածված ամենուրեք, բացի Անտարկտիկայից և Հյուսիսային Արկտիկայից: ՍՍՀՄ-ում բնադրում են 35, ՀՍՍՀ-ում՝ 24 տեսակ (արծիվ, ուրուր, գիշանգղ ևն): Ճ-ի մեծ մասը չվող են: Ապրում են անտառներում, բաց տարածքներում: Մոնոգամ են, բույնը դնում են ծառերի, ժայռերի վրա, գետնին: Թխսում է էգը կամ արուն: Սընվում են մանր ողնաշարավորներով, լեշով, փափկամարմիններով, միջատներով:

# Մ

**Մ**, հայերեն այբուբենի քսաներորդ տառը: Անունն է «մեն»: Ստեղծել է Մեսրոպ Մաշտոցը տառակերտման սեփական սկզբունքով: Մտնում է «կրկնահար» տառախմբի մեջ: Կազմված է երեք ուղղաձիգ տարրերից, ընդ որում երկարը կրկնված է և նուրբով իրար միացած ստորին ծայրերից, իսկ լայնը կապվում է երկարին աջ կողմի վերին ծայրից՝ **Մ**: *Գրչագիրը* և *երկաթագիրը* նույնն են, միայն տարբերությունը ուղիղ և կոր նուրբերի մեջ է՝ **Մ**, **Մ**: Տառը որոշ փոփոխություն է կրում *բոլորգրում*, որից էլ անցնում է *շղագրին* և *նոտրգրին*: Երկարներից առաջինը հավասարվում է կարճ գծերին և կազմում բոլորակ՝ տողի վրա. մյուս մասերը մնում են նույնը՝ **մ**, *մ*, **մ**: Մ տառը նշանագրում է հայերեն երկշրթնային ձայնորդ ռնգային բաղաձայն հնչյունը (հնչույթը): **Բ**, **պ**, **փ** բաղաձայններից առաջ հնչում է **ն** (ամբարանբար, ամպ-անպ, փամփուշտ-փանփուշտ): Մնացած բոլոր դեպքերում պահպանում է իր հնչույթային արժեքը:

Մ նշանակել է երկու հարյուր և երկուհարյուրերորդ: Բյուրի նշանով (Մ̄)՝ երկու միլիոն: Արաբ. թվանշանների գործածությունից հետո էլ օգտագործվել է որպես քանակական և դասական թվական: Այժմ օգտագործվում է դասական թվականի արժեքով (Մ-երկուհարյուրերորդ):

*Ա. Մաթևոսյան*

**«Մ»**, ընդհանուր նշանակության էլեկտրոնային հաշվողական մեքենաներ (ԷՀՄ): Նախատեսված են լայն դասի խնդիրների լուծման համար, մասնավորապես տեխնոլոգիական պրոցեսների կառավարման և բազմափուլ ստորակարգային համակարգերում աշխատանքի համար: «Մ» անվանաշարի առավել արդյունավետ մոդելներից է «Մ-4030»-ը, որը «Մ-2000», «Մ-3000» և «Մ-4000» կոմպլեքսների հետագա զարգացման արդյունք է: Միջին արագագործությունը վայրկյանում 100 հզ. գործողություն է, օպերատիվ հիշողության սարքի (ՕՀՍ) ծավալը՝ 512 հզ. բայտ: Հաշվողական տեխնիկայի միջոցների ագրեգատային համակարգի (ՀՏԱՀ) միջին մակարդակի մոդելներից են «Մ-5000»-ը (օգտագործվում է հիմնականում տնտ. ինֆորմացիայի մշակման համար՝ պերֆորացիոն հաշվողական կոմպլեքսի կազմում կամ որպես մեքենա-սատելիտ), «Մ-6000»-ը և «Մ-400»-ը (որպես մեքենաների ցանցը կառավարող ԷՀՄ), որոնք մոդելային կառուցվածքով փոքր հզորության ԷՀՄ-ներ են: «Մ-6000»-ը և «Մ-7000»-ը մտնում են տեխնոլոգիական պրոցեսների կառավարման համակարգի մեջ: Հաշվողական ենթահամակարգի հիմքում ընկած է «Պարամետր» տիպի ԷՀՄ, որի արագագործությունը վայրկյանում 200 հզ. գործողություն է, ՕՀՍ-ի ծավալը՝ մինչև 64 հզ. բայտ: ՀՏԱՀ—Մ-ի բազայի վրա ստեղծվել է «ՍՄ» անվանաշարի նոր մեքենաների համակարգ: «ՍՄ-1»-ը և «ՍՄ-2»-ը՝ փոքր հզորության ԷՀՄ-ներ են, որոնց արագագործությունը կազմում է վայրկյանում 100—200 հզ. գործողություն: «ՍՄ-1»-ի, «Մ-6000»-ի և «Մ-7000»-ի միջև, ինչպես նաև «ՍՄ-2»-ի և «Մ-7000»-ի միջև կա ծրագրային համատեղելիություն: «ՍՄ-3»-ում օգտագործված է «Մ-400»-ի ծրագրային ապահովումը: «ՍՄ-4»-ը կարող է ունենալ մինչև 256 հզ. բայտ ծավալով ՕՀՍ:

*Բ. Մելիք-Շահնազարով*

Գրչագիր V-X դդ.

Գլխագիր V-XX դդ.

Երկաթագիր V-IX դդ.

Գրչագիր մինչև XII դ.

Երկաթագիր VI-X դդ.

Բոլորգիր V-XX դդ.

Գրչագիր VIII-XIII դդ.

Երկաթագիր VII-XV դդ.

Բոլորգիր V-XX դդ.

Գրչագիր VIII-XIII դդ.

Երկաթագիր V-XX դ.

Գրչագիր X դ.

Մեծատառ նոտրգիր XV-XIX դդ.

Շղագիր XII-XX դդ.

Գրչագիր XX դ.

Շղագիր XX դ.

Նոտրգիր XV-XIX դդ.

**ՄԱ**, Մ ա ս, փոքրասիական աստվածուհի, դիցամայր: Խորհրդանշել է մեռնող և հարություն առնող բնության ուժերը: Գլխավոր տաճարատեղին եղել է Կապադովկիայի Կոմանա քաղաքը: Ըստ Ստրաբոնի, Մ-ի մեհյանը սպասարկել են 6000 քրմեր ու քրմուհիներ, որոնք դիտվել են արքայազուններ: Քրմապետը համարվել է թագավորի փոխանորդը կամ տեղապահը: Մ-ի պաշտամունքը նշվել է աղմկալից խրախճանքներով: Մեռնող բնությունը խորհրդանշելու համար կատարվել են ողբահանդեսներ և արյունոտ զոհաբերումներ (մոլեռանդ երկրպագուներն ամորձատել են իրենց ևն): Փռյուգիայում Մ. նույնացվել է *Կիբելային*, Հայաստանում՝ *Անահիտին*, Հունաստանում՝ Ենիոյին, Հռոմում՝ Բելլոնային:

**ՄԱ ՅՈՒԱՆ**, Ճ ի ն-չ ա ն (XII դ. վերջ — XIII դ. 1-ին կես, Շճանսի գավառ), չին գեղանկարիչ: Հանչժոուի գեղանկարչության ակադեմիայի գործիչ: Ստեղծել է բնանկարներ («Միայնակ ձկնորսը գետի վրա, ցրտին», Ազգային թանգարան, Տոկիո), ինչպես և «ծաղիկներ-թռչուններ» ժանրի ստեղծագործություններ («Սալորի ծաղիկները, քարերը և վայրի բադերը լեռնային գետակում», Գուգուն թանգարան, Պեկին): Մ. Յու-ի միագույն և երանգավորված բնանկարներին, որոնք խորապես մարմնավորում են բնությունը, որպես աշ-

խարիի միասնության ու անվերջության փիլ. ըմբռնում, բնորոշ է զուսպ հուզմունքով համակված հայեցողական տրամադրությունը: Մ. Յու. լայնորեն օգտա-



Մա Յուան. «Լիալուսին», երփնագիր մետաքսագալար (XII դ. վերջ—XIII դ. սկիզբ, Հոկոնե թանգարան, Ճապոնիա)

գործել է չինական գեղանկարչության համար նոր այնպիսի արտահայտչամիջոցներ, ինչպիսիք են կոմպոզիցիայի ասիմետրիկությունը, շեշտված, լայն գունաբծերը:

**ՄААՍ**, Մ յ ո զ (ֆլամ. Maas, ֆրանս. Meuse), գետ Ֆրանսիայում, Բելգիայում և Նիդերլանդներում: Երկարությունը 925 *կմ* է, ավազանը՝ 36 հզ. *կմ*$^{2}$: Սկիզբ է առնում Լանգրի սարավանդից, կտրում Արդենները և թափվում Հռենոսի դելտայի ձախ բազուկի մեջ: Սնումը ձնաանձրևային է, հորդացումը՝ ձմռանն ու գարնանը: Ջրի միջին ծախսը ստորին հոսանքում 300—400 *մ*$^{3}$/*վրկ* է, առավելագույնը՝ մինչև 3 հզ. *մ*$^{3}$/*վրկ*: Նավարկելի է մինչև վերին հոսանքը: Սեդան քաղաքից վեր գետի հունը շլյուզավորված է: Ջրանցքներով միացած է Ֆրանսիայի, Բելգիայի, Նիդերլանդների, ԳՖՀ ջրային ուղիների համակարգի հետ: Մ-ի ափին են Վերդեն, Սեդան (Ֆրանսիա), Նամյուր, Լիեժ (Բելգիա), Մաաստրիխտ (Նիդերլանդներ) քաղաքները:

**ՄԱԲԼԻ** (Mably) Գաբրիել Բոննո դը (1709—1785), ֆրանսիացի քաղաքական մտածող, ուտոպիստ կոմունիստ, պատմաբան: Է. *Կոնդիլյակի* եղբայրը: Սովորել է ճիզվիտական կոլեջում և սեմինարիայում, այնուհետև հրաժարվել է հոգևոր ծառայությունից, 1742-ից զբաղվել դիվանագիտական, 1746-ից՝ գիտական գործունեությամբ: Մ-ի հայացքների հիմքում ընկած էին *հասարակական դաշինքի* և *բնական իրավունքի* տեսությունները: Նա գտնում է, որ մարդկանց թշնամությունը ոչ թե բնական վիճակի, այլ հետագայում առաջացած մասնավոր սեփականության և անհավասարության հետևանք է (այսպիսով նա հակադրվել է Թ. *Հոբսին* և *ֆիզիոկրատներին*): Ըստ Մ-ի, մարդկանց սոցիալական միասնության ձգտման հիմքը հավասարության ձգտումն է («սոցիալական սերը»): Բանականությունը չի կարող իշխել մարդկանց զգացմունքներին (այդ «կատաղի հրեշին»), և նրանք չեն կարող վերադառնալ բնական վիճակի: Հետևաբար, կոմունիստական իդեալի հաստատումը անհնար է, և նա քարոզում էր ճգնավորական կոմունիզմ՝ գույքային անհավասարության նվազեցում, պահանջմունքների սահմանափակում, ճոխությունների կանխում: Մ. գտնում էր, որ ժողովուրդը գերագույն իշխանության կրողն է, որ նա հեղափոխության իրավունք ունի, հատկապես, եթե այն ուղղված է բռնության դեմ: Սակայն հեղափոխությունը, ըստ Մ-ի, միայն մասնակի, սահմանափակ լուծման միջոց է: Չնայած աշխարհայացքային սահմանափակությանը, Մ-ի գաղափարները մեծ լիցք են հաղորդել Ֆրանս. մեծ հեղափոխության ձախ ուժերին:

*Երկ.* Избр. произв., М.—Л., 1950.

*Գրկ.* В о л г и н В. П., Развитие общественной мысли во Франции в XVIII в., М., 1958; Е г о ж е, Французский утопический коммунизм, М., 1960. *Գ. Մխիթարյան*

**ՄԱԲՈՒՅԱՆԵՐ** (Mabuya), սցինկայինների ընտանիքի մողեսների սեռ: Մարմինը սովորաբար գորշ գույնի է, երկայնաձիգ բաց շերտերով ու մուգ բծերով. երկարությունը մինչև 22 *սմ*: Վերջավորությունները զարգացած են: Արագաշարժ են, լավ մագլցում են լեռները, ծառերը և թփերը, առանձին տեսակներ խոր բներ են փորում: Հայտնի է մոտ 90 տեսակ, տարածված Աֆրիկայում, Մադագասկարում, Հարավային Ասիայում, Հարավային և Կենտրոնական Ամերիկայում: Սնվում են միջատներով և այլ մանր անողնաշարավորներով: Առավելապես ձվակենդանածին են, կան նաև ձվածիններ: ՍՍՀՄ-ում՝ Հայաստանի հվ-ում, Երևանի շրջակայքում, Թուրքմենիայում, Ուզբեկստանում հանդիպում է ո ս կ ե գ ո ւ յ ն մ ա բ ո ւ յ ա ն (M. aurata): ՀՍՀ-ում Մ. գրանցված են Կարմիր գրքում:

*Ֆ. Դանիելյան*

**ՄԱԳԱԴԱՆ**, քաղաք, ՌՍՖՍՀ Մագադանի մարզի կենտրոնը: Նավահանգիստ է Օխոտի ծովի Նագաևոյի խորշում, Կոլիմայի ավտոճանապարհի սկզբնակետն է: Օդային գծերով կապված է Մոսկվայի, Լենինգրադի և այլ քաղաքների հետ: 124 հզ. բն. (1980): Կան լեռնային սարքավորումների, շինանյութերի արտադրության ձեռնարկություններ, կարի ֆաբրիկա, կաշվեկոշիկի կոմբինատ, ՋԷԿ, Հյուսիս-Արևելյան կոմպլեքսային, ոսկու և հազվադեպ մետաղների ԳՀԻ-ներ, Հյուսիս-Արևելքի գյուղատնտեսության զոնալ ԳՀԻ, Հյուսիսի կենսբ. պրոբլեմների ինստ. Խաղաղօվկիանոսյան ձկնորսական տնտեսության և օվկիանոսագիտության ինստ-ի մասնաճյուղ, Համամիութենական հեռակա պոլիտեխնիկական և հեռակա իրավաբանական ինստ-ների մասնաճյուղեր, մանկավարժական ինստ., պոլիտեխնիկական տեխնիկում, բժշկ. և երաժշտական ուսումնարաններ, երաժշտադրամատիկական թատրոն, հեռուստակենտրոն, հայրենագիտական թանգարան: Քաղաք է 1939-ից:

**ՄԱԳԱԴԱՆԻ ՄԱՐԶ**, ՌՍՖՍՀ կազմում: Ստեղծվել է 1953-ի դեկտ. 3-ին: Գտնվում է ՍՍՀՄ ծայր հս-արլ-ում: Ողողվում է Հյուսիսային սառուցյալ և Խաղաղ օվկիանոսների ջրերով: Տարածությունը 1199,1 հզ. *կմ*$^{2}$ է, բնակչությունը՝ 478 հզ. (1980): Մ. մ-ի կազմում է Չուկոտական ինքնավար օկրուգը: Բաժանվում է 16 շրջանի, ունի 4 քաղաք, 52 քտա, 78 գյուղսովետ: Կենտրոնը՝ Մագադան: 1967-ին պարգևատրվել է Լենինի շքանշանով:

**Բնությունը**: Մ. մ-ի ափագիծը կտրտված է Անադիրի, Կրեստի, Շելիխովի ծոցերով և Չաունյան, Կոլյուչինյան, Պենժինյան, Գիժիգայի խորշերով: Արլ-ում Չուկոտյան թերակղզին է: Տարածքի մեծ մասը լեռնային է, տիրապետում են բարձրավանդակներն ու սարահարթերը, միջլեռնային ցածրավայրերը: Հվ-արմ-ում Կոլիմայի բարձրավանդակն է (600—1962 *մ* բարձրությամբ), հս-արմ-ում՝ Չերսկու լեռնաշղթայի Չերգե, Պոլյառնի և այլ լեռներ (մինչև 2500 *մ* բարձրությամբ), հս-արլ-ում՝ Չուկոտյան բարձրավանդակը և Անադիրի սարահարթը: Նշանավոր են Անադիրի, Չաունյան, Վանկարեմյան, Գիժիգայի դաշտավայրերը: Օգտակար հանածոներից կան ածուխ, ոսկի, անագ, վոլֆրամ, սնդիկ:

Կ լ ի մ ա ն խիստ ցամաքային է, ծովափերին՝ ցուրտ ծովային: Ձմեռը երկարատև է (7—8 ամիս): Նվազագույն ջերմաստիճանը —60°C-ից մինչև —65°C է: Հունվարի միջին ջերմաստիճանը ներքին շրջաններում —38°C է, Օխոտի ծովափին՝ —19°C-ից մինչև —23°C, Հյուսիսային սառուցյալ օվկիանոսի ափերին՝ —24°C-ից մինչև —28°C: Ամառը կարճատև է, զով, հաճախակի են մառախուղները: Հուլիսի միջին ջերմաստիճանը Օխոտի ծովափին 11—12°C է, արկտիկական ափերին՝ 3—6°C, ներքին շրջաններում՝ 14—16°C: Տարեկան տեղումները 300—350 *մմ* են, Օխոտի և Բերինգի ծովափերին՝ մինչև 700 *մմ* Մ. մ. բացառությամբ Օխոտի ծովափնյա մասի, գտնվում է բազմամյա սառածության զոնայում: Վեգետացիոն շրջանը 100—105 օր է: Գետերը պատկանում են Հյուսիսային սառուցյալ և Խաղաղ օվկիանոսների ավազաններին: Գլխավոր գետերը՝ Կոլիման և Անադիրը օգտագործվում են փոխադրումների, լաստառաքման և հիդրոէներգիա ստանալու համար: Կան մանր շատ լճեր: Մ. մ. գտնվում է տունդրայի, անտառատունդրայի և տայգայի զոնաներում: Տիրապետում են ճահճա-գլեյան, տորֆա-գլեյան, պոդզոլային, լեռնային շրջաններում՝ լեռնա-տայգային և լեռնատունդրային հ ո ղ ե ր ը: Մեծ տարածում ունեն թփուտները: 21 մլն *հա* (տարածքի 17%) ծածկված է անտառով: Տայգայում հիմնականում փիճին է: Կենդանիներից կան բևեռային աղվես, սկյուռ, աղվես, նապաստակ, արջ, հս. եղջերու,




կուղխ, որմզդեղն են: Բազմաթիվ թռչուններ (կաքավներ, բադեր, սագեր) ունեն արդյունագործական նշանակություն: Ծովերը հարուստ են ձկներով:

Բ ն ա կ չ ու թ յ ա ն 70%-ը ռուսներ են, ավելի քան 4%-ը՝ հյուսիսային ժողովուրդներ: Միջին խտությունը 1 *կմ²* վրա 0,4 մարդ է: Բնակչության 70%-ից ավելին կենտրոնացած է մարզի հվ-արմ. մասում, քաղաքային բնակչությունը 78,3% է (1979): Բոլոր քաղաքները (Մագադան, Սուսուման, Պևեկ, Անադիր) ստեղծվել են սովետական իշխանության տարիներին:

**Տնտեսությունը**: Տնտեսության հիմքը կազմում են լեռնահանքային արդյունաբերությունն ու գունավոր մետալուրգիան (Կոլիմայի և նրա վտակների վերին հոսանքների ավազան), ոսկու, անագի, վոլֆրամի, սնդիկի արդյունահանման և հանքահարստացուցիչ ձեռնարկությունները: Զարգացած է ձկնեղենի արդյունաբերությունը: Կան վառելանյութի, էներգետիկայի, մեքենաշինության, շինանյութերի, թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկություններ, ՊՇԷԿ, ՀԷԿ, ԱԷԿ: Կա ածխի արդյունահանություն: Մ. մ-ում կան 50 սովետական, 11 կոլեկտիվ և զգալի թվով օժանդակ տնտեսություններ: Գյուղատնտ. օգտագործելի հողատարածությունը 271 հզ. *հա* է, որից 249 հզ. *հա*՝ խոտհարք և արոտավայր, 22 հզ. *հա*՝ ցանքատարածություն (75%-ը՝ կերային կուլտուրաներ, մնացածը՝ հացահատիկ, կարտոֆիլ, բանջարեղեն են): Գյուղատնտեսության առաջատար ճյուղերն են եղջերվաբուծությունը (722,5 հզ. գլուխ) ու կաթնատու անասնապահությունը (խոշոր եղջերավոր անասուններ՝ 25 հզ. գլուխ, որի 48%-ը կովեր են): Կա մորթատու գազանաբուծություն և արդյունագործական որսորդություն: Մարզում երկաթուղի չկա: Արտաքին բեռնաշրջանառությունը կատարվում է ծովային, ներքին փոխադրումները՝ ավտոմոբիլային տրանսպորտով: Ծովային նավահանգիստներն են Նագաեվոն (Մագադան քաղաք), Պևեկը, Պրովիդենիան, Էգվեկինոտը, Անադիրը, Բերինգովսկին: Կարևոր օդային գծերն են Մագադան—Սուսուման—Կալիկչանը, Պևեկ—Կոմսոմոլսկին, Էգվեկինոտ—Իուլտինը: Զարգացած է տեղական նշանակության նավագնացությունը:

**Լուսավորությունը և առողջապահությունը**: 1972—73 ուս. տարում մարզում կար 284 հանրակրթական դպրոց, 2 պրոֆտեխ. ուսումնարան, միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություններ, մանկավարժական ինստ.: Ունի մի շարք ԳՀԻ-ներ և համամիութենական բուհերի մասնաճյուղեր: 1973-ին Մ. մ-ում կային 224 մասսայական գրադարան, հայրենագիտական և այլ թանգարաններ, 251 ակումբ, 480 կինոսարք, 29 արտադպրոցական հաստատություն (այդ թվում՝ 13 պիոներների տուն, 12 մանկական սպորտդպրոց են), 100 հիվանդանոց (6,5 հզ. մահճակալով), 1,7 հզ. բժիշկ: Մագադանից 286 *կմ* հս. գտնվում է Տալայա ջերմուկացեխաբուժական կուրորտը: Լույս են տեսնում մարզային թերթեր: Գործում են ռադիոհաղորդումների և հեռուստատեսային կենտրոններ:

**ՄԱԳԱՂԱԹ**, մ ա գ ա ղ ա տ (ասոր. magalləta — գալարված մատյան), կաշվից պատրաստված գրանյութ: Ըստ հուն. ավանդության ստեղծվել է փոքրասիական Պերգամոն քաղաքում, թագավոր Եվմենես II-ի (մ. թ. ա. 197—159) օրոք: Քաղաքի անունով կոչվել է պ ե ր գ ա մ ե ն տ: *Պապիրուսի* համեմատությամբ թանկ էր, սակայն՝ դիմացկուն, գրվում էր երկու երեսին և փաթեթի փոխարեն իրար վրա դնելով ստացվում էր այժմյան գրքի ձևը: Հայերը գործածել են «Մ.» անվանումով: Մ-ի համար օգտագործվել է մանր և խոշոր եղջերավոր մատղաշ անասունների մորթին: Ունեցել է մշակման տարբեր եղա-

նակ եր, որոնց դեղատոմսերը պահպանվել են հայերեն բազմաթիվ ձեռագրերում: Հայերը մինչև VIII—IX դդ. օգտագործել են Մ., այնուհետև՝ նաև թուղթ, որը զգալով տիրապետող է դարձել: Հայերեն ամենամեծ մագաղաթյա ձեռագիրը «*Մշո ճառընտիրն*» է, որը ունեցել է 75 *սմ*×50 *սմ* մեծության. 660 (այժմ՝ 600) թերթ՝ պատրաստված արջառի և երինջի կաշվից. ամենափոքրը՝ լուցկու տուփից փոքր է, պատրաստված նորածին ուլի մորթուց:

*Ա. Մաթևոսյան*.

**ՄԱԳԴԱԼԵՆԱ** (Magdalena), գետ Կոլումբիայում: Երկարությունը 1540 *կմ* է, ավազանը՝ 260 հզ. *կմ*$^2$: Սկիզբ է առնում Կենտրոնական Կորդիլիերաների հվ-ից, թափվում՝ Կարիբյան ծով: Հոսում է Կենտրոնական և Արևելյան Կորդիլիերաների միջլեռնային իջվածքով և Մերձկարիբյան դաշտավայրով: Միջին հոսանքում սահանքավոր է: Ջրի միջին ծախսը՝ 8—10 հզ. *մ*$^3$/*վրկ*: Գլխավոր վտակը Կաուկան է: Նավարկելի է Նեյվա քաղաքից սկսած: Մ-ի ափերին են Օնդա, Պուերտո Բեռիո, Բառանկիլյա քաղաքները:

**ՄԱԳԴԵԲՈՒՐԳ** (Magdeburg), քաղաք ԳԴՀ-ում, համանուն օկրուգի վարչական կենտրոնը: 279 հզ. բն. (1976): Երկաթուղային և ավտոճանապարհների հանգույց է, գետային նավահանգիստ Էլբայի վրա: ԳԴՀ արդ., առևտրատրանսպորտային, ծանր մեքենաշինության, քիմ., սննդի արդյունաբերության կենտրոն է: Կա բժշկ. ակադեմիա, ծանր մեքենաշինության բարձրագույն դպրոց, արվեստի և ջրային տնտեսության մասնագիտական դպրոցներ: Առաջին անգամ հիշատակվել է 805-ին:

**ՄԱԳԴԵԲՈՒՐԳՅԱՆ ԻՐԱՎՈՒՆՔ** (jus theutonicum magdeburgense), Մագդեբուրգ քաղաքի քաղաքային ֆեոդալական իրավունքը: Ձևավորվել է XIII դ.: Աղբյուրներ են ծառայել *սաքսոնյան հայելին*, Մագդեբուրգի *շյոֆենների դատարանի* որոշումները, քաղաքային պատրիկության արքեպիսկոպոս Վիխմանի շնորհած արտոնությունները ևն: Կարգավորել է դատարանի, քաղաքային իշխանության գործունեությունը, հողային սեփականության, տիրույթների խախտման, շարժական գույքի զավթման իրավահարաբերություններ, սահմանել պատիժներ: Մ. ի. ամրապնդել է ֆեոդալների դեմ մղվող պայքարում քաղաքացիների հաջողությունները: Կիրառվել է Արևելյան Գերմանիայում, Արևելյան Պրուսիայում, Չեխիայում, Սիլեզիայում, Հունգարիայում: Լեհաստանում և Լիտվայում, իսկ հետո անցել է նաև Գալիցիա և Բելոռուսիա:

Մ. ի. հարատևել է մինչև XVIII—XIX դդ.:

**ՄԱԳԵԼԱՆ**, Մ ա գ ա լ յ ա յ ն շ (պորտուգ. Magalhães), Ֆեռնան (մոտ 1480—1521), պորտուգալացի ծովագնաց: Կատարել է առաջին շուրջերկրյա նավարկությունը: 1505—12-ին մասնակցել է պորտուգ. արշավախմբերին, 2 անգամ հասել Մալակկա թերակղզի: 1517-ին Պորտուգալիայից մեկնել է Իսպանիա, 1519—1521-ին ղեկավարել է 5 նավից կազմված իսպանական արշավախումբը, որի նպատակն էր արմ. նավարկության ուղիով հասնել Մոլուքյան կղզիներ: 1520-ին հասել է Լա Պլատայի գետաբերան, հայտնագործել Սան Մաթիաս և Սան Խորխե ծոցերը, անցել իր հայտնագործած նեղուցով (տես *Մագելլանի նեղուց*), կտրել Խաղաղ օվկիանոսը (17000 *կմ*), հասել Ֆիլիպինյան կղզիներ, որտեղ սպանվել է տեղացիների հետ ընդհարման ժամանակ: Արշավախմբի միայն մեկ նավ է վերադարձել Իսպանիա՝ հվ-ից շրջանցելով Աֆրիկան: Մ-ի նավարկությունը վերջնականապես ապացուցեց Երկրի գնդաձևությունը և Համաշխարհային օվկիանոսի առկայությունը:

**ՄԱԳԵԼԱՆԻ ՆԵՂՈՒՑ**, Հարավային Ամերիկա մայր ցամաքի և Հրո երկիր արշիպելագի միջև: Ափերը պատկանում են Չիլիին: Միացնում է Ատլանտյան և Խաղաղ օվկիանոսները: Երկարությունը մոտ 550 *կմ* է, նվազագույն լայնությունը՝ 3,3 *կմ*, նվազագույն խորությունը նավարկուղում՝ 31—33 *մ*: Նավարկությունը վտանգավոր է արմ. ուժեղ քամիների, մեծ քանակության ստորջրյա ժայռերի և ծանծաղուտների պատճառով: Գլխավոր նավահանգիստը Պունտա Արենասն է (Չիլի): Հայտնագործել և առաջինն անցել է Ֆ. *Մագելլանը*, 1520-ին:

**ՄԱԳԻՍՏՐԱՏՈՒՐԱ** (< լատ. magistratus — պաշտոնավոր, պետ), 1. պետական պաշտոն Հին Հռոմում: Առաջացել է հանրապետության հաստատման ժամանակ (մ. թ. ա. VI դ. վերջ): Սկզբնապես բոլոր Մ-ները [կոնսուլ, դիկտատոր (բռնապետ), հեծելազորի հրամանատար, պրետոր, ցենզոր, էդիլ, քվեստոր ևն] զբաղեցրել են (բացի ժող. տրիբունի պաշտոնից) պատրիկները, մ. թ. ա. III դարից՝ նաև պլեբեյները: Մ-ները չեն վարձատրվել, ընտրվել են կարճ ժամկետով (սովորաբար՝ 1 տարի) և կոլեգիալ էին (բացի դիկտատորի պաշտոնից): Մ. ունեցող անձնավորությունը կոչվում էր մագիստրատ և իրավունք ուներ հրամանագրեր հրապարակել իր իրավասությունների շրջանակներում: Յուրատեսակ Մ-ներ էին քրմական կոլեգիաները: 2. Տերմին, որ բուրժ. երկրներում օգտագործվում է իբրև դատական գերատեսչության հոմանիշ:

**ՄԱԳԻՍՏՐՈՍ** (լատ. magister — պետ, ուսուցիչ), ակադեմիական երկրորդ աստիճան, որ շնորհվում է ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի և բարձրագույն կրթության անգլո-ամերիկյան համակարգ ունեցող երկրների բարձրագույն ուսումնական հաստատություններում: Միջին դարերում Մ-ի աստիճան շնորհվում էր «յոթ ազատ արվեստներ» դասավանդողներին, հետագայում՝ համալսարանների փիլ. ֆակուլտետների շրջանավարտներին, իսկ XIX դ. փոխարինվում է փիլիսոփայության դոկտորի աստիճանով: Մինչհեղափոխական Ռուսաստանում Մ-ի աստիճան շնորհվում էր համալսարանների բոլոր ֆակուլտետներում (բացի բժշկականից), և այն ստացող անձինք իրավունք ունեին ղեկավարելու ամբիոն: Մ-ի աստիճան շնորհվում էր համալսարանն ավարտելուց հետո՝ տվյալ գիտության ճյուղից բանավոր քննություն հանձնող և հրապարակայնորեն դիսերտացիա պաշտպանող անձանց: Աչքի ընկնող մագիստրոսական դիսերտացիայի համար շնորհվում էր դոկտորի աստիճան: Բարձրագույն կրթության, ինչպես նաև գիտական կոչումների և աստիճանների սովետական համակարգում Մ-ի աստիճան չկա: Արտասահմանում շնորհվում է համալսարան կամ դրան համարժեք ուս. հաստատություն ավարտած անձանց, որոնք 1—2 տարի լրացուցիչ դասընթացներ են անցնում և, հատուկ քննություն հանձնելով, պաշտպանում դիսերտացիա: Իրավաբանական և բժշկ. մասնագիտությունների գծով Մ-ի աստիճանի փոխարեն շնորհվում է իրավունքի կամ բժշկության դոկտորի աստիճան: Մ-ի աստիճան ստացողի որակավորումը մոտավորապես համարժեք է սովետական բուհերի (5-ամյա ուսուցմամբ) դիպլոմային աշխատանք (նախագիծ) պաշտպանած շրջանավարտների ստացած որակավորմանը:

**ՄԱԳԻՍՏՐՈՍԻ ՃԵՄԱՐԱՆ**, տես *Սանահինի համալսարան*:

**ՄԱԳԼՑՈՂ ԲՈՒՅՍԵՐ**, վեր բարձրացող և հատուկ հարմարանքների օգնությամբ որևէ հենարանի ամրացող բույսեր. պատկանում են լիաններին: Ըստ ամրանալու ձևի բաժանվում են 3 խմբի՝ 1. կ ա ռ չ ո ղ, որոնք մագլցում են ցողունների, տերևների վրա եղած փշերով, կեռիկներով կամ կոշտ մազիկներով (մասրենու շատ տեսակներ, մոշ, կաթնախոտ ևն): 2. Ա ր մ ա տ ն ե ր ի օ գ ն ո ւ թ յ ա մ բ Մ. բ-ի (բաղեղ, վանիլ, սև պղպեղ ևն) ցողունների վրա առաջանում են լույսից խուսափող հավելյալ արմատներ, որոնք հենարանում ճեղք են գտնում և ամրանում: 3. Բ ե ղ ի կ ա կ ի ր ն ե ր ը մագլցում են ցողունների, տերևների կամ նրանց հատվածների, ինչպես նաև ամբողջական ընձյուղների ու ծաղկաբույլերի ձևափոխման հետևանքով առաջացած բեղիկների օգնությամբ (լոբազգիներ, խաղող ևն):

**ՄԱԳՄԱ** (< հուն. μαγμα — խմոր, թանձր քսուք), հիմնականում սիլիկատային կազմի հրահեղուկ զանգված, որ առաջանում է Երկրի խոր հորիզոններում: Սովորաբար Մ. մեծ թվով քիմ. տարրերի միացությունների բարդ լուծույթ է, որոնց մեջ գերակշռում են թթվածինը, Si, Al, Fe, Mg, Ca, Na և K: Երբեմն մագմայում լուծվում են (լուծված են լինում) մինչև մի քանի տոկոս ցնդող բաղադրիչներ, հիմնականում ջուր, սակավ՝ ածխածնի օքսիդներ, ծծմբաջրածին, ջրածին, ֆտոր, քլոր ևն: Մ. խոր հորիզոններում բյուրեղանալու դեպքում ցնդող բաղադրիչները մասամբ մտնում են տարբեր միներալների (ամֆիբոլների, փայլարների) կազմի մեջ: Հրաբխային մարզերում Մ., հասնելով Երկրի մակերևույթին, արտավիժում է *լավայի* տեսքով, հրաբուխների խառնարաններում առաջացնում էքստրուզիվ մարմիններ կամ դուրս նետվում գազերի հետ՝ մանրացված նյութի ձևով: Վերջինս կողային ապարների բեկորների և նստվածքային նյութի հետ խառնված կուտակվում է զանազան տուֆերի ձևով: Երկրի խոր հորիզոններում առաջացող մագմատիկ զանգվածները կազմավորում են ըստ ձևի և չափերի բազմազան ինտրուզիվ մարմիններ՝ մանրերից, որոնք Մ-ով լցված փոքր ճեղքեր են, մինչև հսկայական զանգվածներ՝ մի քանի հզ. *կմ*$^2$ մակերեսով: Մ. երկրակեղևում

ներդրվելու կամ Երկրի մակերևույթին արտավիժելու դեպքում առաջանում են *մագմատիկ ապարներ*, որոնք պատկերացում են տալիս նրա կազմի մասին: Ուսումնասիրելով տարբեր մագմատիկ ապարների տեղաբաշխումը Երկրի մակերևույթին և ցույց տալով բազալտների ու գրանիտների գերակշիռ տարածվածությունը՝ սովետական երկրաբան Ֆ. Յու *Լևինսոն-Լեսինգը* ենթադրեց, որ բոլոր հայտնի մագմատիկ ապարներն առաջացել են երկու նախնական՝ հիմքային (բազալտային) և թթու (գրանիտային) Մ-ի հաշվին: Անգլիացի երկրաբան Ա. Հոլմսը առաջ քաշեց հիպոթեզ հիմքային և թթու Մ-ների հետ մեկտեղ նաև գերհիմքային (պերիդոտիտային) Մ-ի առկայության մասին: Ավելի ուշ՝ XX դ. 20-ական թթ. վերջին ամերիկացի պետրոլոգ Ն. Բոուենը առաջարկեց հիպոթեզ միայն մեկ նախնական՝ բազալտային Մ-ի գոյության մասին: 50-ական թթ. վերջին նա ապացուցեց գրանիտային Մ-ի գոյության հնարավորությունը բարձր ճնշման, ջրի առկայության (2—4%), մոտ 600°C ջերմաստիճանի պայմաններում: Սկզբում կարծում էին, որ Մ. Երկրի խոր հորիզոններում առաջացնում է հոծ թաղանթներ: Սակայն երկրաֆիզիկական հետազոտությունների օգնությամբ ապացուցվեց, որ հրահեղուկ Մ-ի մշտական թաղանթներ չկան, որ Մ. պարբերաբար առաջացնում է առանձին օջախներ Երկրի տարբեր կազմ և խորություն ունեցող թաղանթների սահմաններում: ՍՍՀՄ-ում, ԱՄՆ-ում, Ճապոնիայում, Ավստրալիայում ինտենսիվ փորձարարական հետազոտություններ են տարվում մագմայատիպ հալոցքների առաջացման պայմանների ուսումնասիրման ուղղությամբ: Մ-ի բնույթի բացահայտման համար կարևոր նշանակություն ունեն երկրաֆիզիկական հետազոտությունների տվյալները երկրակեղևի և վերին մանթիայի վիճակի (հատկապես Երկրի խոր հորիզոնների ջերմության) մասին: Տարբեր կազմի Մ-ներն ունեն տարբեր ֆիզիկական հատկություններ, որոնք կախված են նաև ջերմաստիճանից և ցնդող բաղադրիչների պարունակությունից: Մ. շատ օգտակար հանածոներ կրող է, որոնք նրա բյուրեղացման ընթացքում կուտակվում են առանձին տեղամասերում՝ ստեղծելով ներծին հանքավայրեր: Մի շարք հանքային միներալներ (Cr-ի, Ti-ի, Ni-ի, Pt-ի), ինչպես նաև ապատիտը անջատվում են բյուրեղացման ընթացքում և առաջացնում մագմատիկ հանքավայրեր: Ենթադրում են, որ ինտրուզիվների ձևավորման վերջնական փուլերում (ետմագմատիկ փուլ) Մ-ում գտնվող ցնդող բաղադրիչների հաշվին ձևավորվում են գունավոր, հազվագյուտ և թանկարժեք մետաղների հիդրոթերմալ, գրեյզենային, սկառնային, ինչպես նաև երկաթի հանքավայրեր:

**ՄԱԳՄԱՏԻԿ ԱՊԱՐՆԵՐ**, հրային ապարներ, ապարներ, որոնք առաջացել են հրահեղուկ *մագմայի* սառչելու և բյուրեղանալու հետևանքով: Մագման կարող է սառչել ինչպես Երկրի խոր հորիզոններում, այնպես էլ Երկրի մակերևույթին՝ արտավիժելուց հետո: Մ. ա., ըստ սառչելու պայմանների, լինում են ինտրուզիվ (խորքային) և էֆուզիվ (հրաբխային, արտավիժած), որոնք իրարից տարբերվում են ստրուկտուրայով և տեքստուրայով: Ինտրուզիվ ապարները (գրանիտ, սիենիտ, դիորիտ) մագմայի դանդաղ բյուրեղացման պատճառով ունեն լրիվ բյուրեղային ստրուկտուրա և ներդրվում են որպես բաթոլիթներ, շտոկներ, լակոլիթներ, երակներ ևն: Էֆուզիվ ապարները (բազալտ, անդեզիտ, տուֆ) մագմայի արագ սառչելու հետևանքով ունենում են ոչ լրիվ բյուրեղային ստրուկտուրա, հագեցած են հրաբխային ապակիով և հաճախ տեղադրվում են որպես լավային հոսքեր ու ծածկույթներ: Մ. ա. սովորաբար կազմված են սիլիկատներից: Նրանց գլխավոր բաղադրամասը սիլիկահողն է ($SiO_2$), ըստ որի պարունակության Մ. ա. լինում են՝ գերհիմքային ($SiO_2<40\%$), հիմքային (40—56%), միջին թթվության (56—65%), թթու (65—70%) և գերթթու (>75%): Սիլիկատներ չպարունակող Մ. ա. (օրինակ, կարբոնատիտները) խիստ սակավ են: Համապատասխանաբար փոխվում է նաև միներալների կազմը Մ. ա-ի առանձնացված խմբերում: Գերհիմքային ապարները (պիրոքսենիտներ, դունիտներ, օլիվինիտներ) բաղկացած են միայն օլիվինից և պիրոքսենից, հիմքայիններում (գաբբրո, բազալտ) առկա է նաև կալցիումային պլագիոկլազ: Թթու ապարներում (գրանիտ, լիպարիտ, դացիտ) նվազում է մագնեզիում-երկաթային ու կալցիումային սիլիկատների պարունակությունը, և հանդես են գալիս ալկալիական դաշտային սպաթներ ու քվարց: Կախված ալկալիների պարունակությունից՝ Մ. ա-ի յուրաքանչյուր խմբում առանձնացվում են նորմալ և ալկալիական շարքի ապարներ (ալկալիական գրանիտներ, նեֆելինային սիենիտներ, ֆոնոլիտներ): Մ. ա-ի տարբեր տիպերի հետ կապված են լինում տարբեր օգտակար հանածոներ (օրինակ, թթու ապարների հետ՝ կապար, վոլֆրամ, ոսկի, հիմքայինների հետ՝ տիտանամագնետիտ, պղինձ, գերհիմքային ապարների հետ՝ քրոմ, պլատին, նիկել, ալկալիականների հետ՝ տիտան, ֆոսֆոր, ապատիտ, ցիրկոնիում, հազվագյուտ հողեր): Նշված բոլոր Մ. ա. լայնորեն տարածված են ՀՍՍՀ-ում: Մ. ա. ունեն տնտ. նշանակություն. կիրառվում են որպես շինանյութ (տուֆեր, լաբրադորիտներ ևն), հղկանյութ (պեմզա) և ջերմամեկուսիչներ (պեմզա, պեռլիտ), ինչպես նաև հումք են արժեքավոր բաղադրիչների կորզման համար (օրինակ, ալյումինիում՝ նեֆելինային սիենիտներից):

**ՄԱԳՄԱՏՈԳԵՆ ՀԱՆՔԱՎԱՅՐԵՐ**, հանքավայրեր, որոնց ծագումը կապված է մագմատիկ գործունեության հետ: Առաջանում են երկու ճանապարհով: Մի դեպքում մագմայից հանքային տարրերը անջատվում են ապար կազմող սիլիկատների հետ միաժամանակ, կամ փոքր-ինչ ավելի. ուշ: Հանքանյութերն առաջացնում են միներալների ցան կամ նրանց ավելի հոծ կուտակներ ինտրուզիվ զանգվածների տարբեր հատվածներում: Հանքային միներալները՝ ինտրուզիաների սառչելու ժամանակ առաջացած ճեղքերում երբեմն գոյացնում են երակաձև, ոսպնյակաձև, հազվադեպ՝ սյունաձև հոծ մարմիններ: Մյուս դեպքում մագման, նախքան սառչելն ու բյուրեղանալը, բաժանվում է սիլիկատային և սուլֆիդային մասերի: Ջերմությունն իջնելու հետ միասին իջնում է սուլֆիդների լուծելիությունը, որոնք հալոցքից կաթիլների ձևով անջատվում են, միանում իրար, կազմում ավելի խոշոր զանգվածներ և ծանրության ուժի տակ իջնում ինտրուզիվ զանգվածների հատակը: Այդ եղանակով են առաջանում հատկապես պղինձ-նիկելային հանքավայրերը: Մ. հ-ի ձևավորումը տեղի է ունենում մի քանի հարյուր աստիճան ջերմության և զգալի ճնշման պայմաններում: Մ. հ. են առաջացնում քրոմը, պլատինը և նրա խմբի տարրերը՝ ալմաստը, տիտանը, երկաթը, հազվագյուտ տարրերը, նիոբիումը, տանտալը, ինչպես նաև պղնձի ու նիկելի հանքանյութերը:

Մ. հ-ի խմբին են պատկանում նաև ետմագմատիկ հանքավայրերը, որոնք առաջանում են մագմայից անջատված գազաջրային լուծույթներից և կազմում բազմաթիվ հիդրոթերմալ, գրեյզենային ու սկառնային հանքավայրերի խումբը և մեծ դեր խաղում մի շարք օգտակար հանածոների համար (Cu, Pb—Zn, Ag, Au, Sb, Hg, բարիտ, ֆլյուորիդ և այլն):

**ՄԱԳՆԱՏ** (ուշ լատ. magnas կամ magnatus — հարուստ, անվանի մարդ), խոշոր ֆեոդալ, մեծատոհմիկ և հարուստ ազնվական Եվրոպայի որոշ երկրներում, հատկապես ֆեոդալական-ճորտատիրական Լեհաստանում ու Հունգարիայում: «Մ.» տերմինը փոխաբերական իմաստով օգտագործվում է արդ. և ֆինանսական խոշոր կապիտալի ներկայացուցիչներին բնութագրելու համար:

**ՄԱԳՆԵԶԻՏ** [Թեսալիայի (Հունաստան) Մագնեսիա մարզի անունով], միներալ: Քիմ. բաղադրությունը՝ $MgCO_3$: Պարունակում է 47,82% MgO և 52,18% $CO_2$: Որպես իզոմորֆ խառնուրդներ մասնակցում են Fe, սակավ՝ Mn և Ca: Բյուրեղագիտական համակարգը տրիգոնային է: Հանդիպում է ռոմբոէդրային, հազվադեպ՝ պրիզմաձև բյուրեղների տեսքով: Գույնը՝ անգույն, սպիտակ, գորշ, դեղին, շագանակագույն: Կարծրությունը՝ 3,5—4,5, խտությունը՝ 3000 *կգ/մ*$^3$: Մ. ունի հիդրոթերմալ, ինֆիլտրացիոն և սակավ՝ նստվածքային ծագում: Հանքավայրերը հայտնի են ՍՍՀՄ-ում (Ուրալ, Սիբիր), Չինաստանում, Բրազիլիայում ևն: Կիրառվում է մետալուրգիայում (որպես հրակայուն նյութ), շինարարության (մագնեզիտային ցեմենտ), ռետինի, թղթի արդյունաբերության մեջ, ինչպես նաև Mg-ի ստացման համար:

**ՄԱԳՆԵԶԻՈՒՄ** (Magnesium), Mg, տարրերի պարբերական համակարգի III պարբերության II խմբի քիմիական տարր: Կարգահամարը՝ 12, ատոմական զանգվածը՝ 24,305: Մ. s տարր է, ատոմի արտաքին էլեկտրոնային թաղանթի կառուցվածքն է $3s^2$: Բնական Մ. բաղկացած է $^{24}Mg$ (78,60%), $^{25}Mg$ (10,11%) և $^{26}Mg$ (11,29%) կայուն իզոտոպներից: Մ. հայտնաբերել է Հ. *Դևին*, 1808-ին: Տարածվա-

ծությամբ Մ. երկրակեղևում վեցերորդ տարրն է (1,87% ըստ զանգվածի), ծովաջրում՝ երկրորդը (0,13%)՝ նատրիումից հետո: Երկրի պատյանի (մանթիայի) բնորոշ տարրերից է՝ գերհիմնային ապարներում միջին պարունակությունը 25,9% է: Բնության մեջ ազատ վիճակում չի հանդիպում: Մտնում է բազմաթիվ սիլիկատային, սուլֆատային և այլ միներալների բաղադրության մեջ (օլիվին, դոլոմիտ, տալկ, մագնեզիտ ևն): Երկրի կենսոլորտում Մ. եռանդուն միգրացվում է, լվացվում հոսող ջրերով և աստիճանաբար տեղափոխվում օվկիանոս:

Մ., թեև չնչին քանակներով, պարունակվում է բոլոր կենդանի օրգանիզմներում (մոտ 0,001—0,05%) և կարևոր դեր է խաղում նրանց կենսագործունեության համար: Որոշ ջրիմուռներ և կրային սպունգներ պարունակում են 3—4% Մ.: Մ. են պարունակում նաև *քլորոֆիլը*, բջջային օրգանելները, ռիբոսոմները, ֆիտինը: Երկրի վրա եղած բույսերի քլորոֆիլում Մ-ի պարունակությունը մոտ 100 մլրդ *տ* է: Մ. ակտիվացնում է որոշ ֆերմենտներ, խթանում ֆոսֆորի ներթափանցումը (հողից) և յուրացումը բույսերում: Կալցիումի և մանգանի հետ ապահովում է բույսերում քրոմոսոմների և կոլոիդ համակարգերի կայունությունը: Մ-ի պակասը առաջացնում է բույսերի քլորոզ: Կենդանիները և մարդը Մ. ստանում են սննդի հետ: Մարդու օրական պահանջը 0,3—0,5 *գ* է (մանկական տարիքում, հղիության և լակտացիայի շրջանում՝ ավելի մեծ): Օրգանիզմում Մ. կուտակվում է լյարդում, որտեղից մասամբ անցնում է մկանները և ոսկորները: Մկաններում Մ. խթանում է ածխաջրային անաէրոբ նյութափոխանակությունը: Մ-ի բնականոն պարունակությունը արյան մեջ 4,3 *մգ*% է: Մ-ի հակատարրը օրգանիզմում կալցիումն է: Մ-կալցիում հավասարակշռության խախտումն առաջացնում է ռախիտ: Մ-ի անբավարարությունը սննդում խաթարում է նյարդային համակարգի բնականոն դրդելիությունը և մկանների կծկումը: Բժշկության մեջ, որպես դեղամիջոց, օգտագործում են Մ-ի սուլֆատը, օքսիդը և կարբոնատը:

Սպիտակ արծաթափայլ մետաղ է: Ալոտրոպային ձևափոխություններ չունի: Հալչում է 651°C-ում, եռում՝ 1107°C-ում, խտությունը՝ 1739 *կգ/մ³*: Ջերմության և էլեկտրականության լավ հաղորդիչ է: Մեխանիկական հատկությունները կախված են մշակման եղանակներից: Քիմիապես ակտիվ տարր է, ուժեղ վերականգնիչ, միացություններում՝ երկարժեք: Աղերի ջրային լուծույթներից դուրս է մղում մետաղների մեծ մասին, թթուներից՝ ջրածնին: Դանդաղ փոխազդում է նաև եռացող ջրի հետ: Խիտ ծծմբական թթվում համարյա չի լուծվում: Չի լուծվում նաև ֆտորաջրածնական թթվում, անլուծելի ֆտորիդով՝ $MgF_2$-ով, պատվելու պատճառով: Տաքացնելիս իրենց օքսիդներից վերականգնում է բազմաթիվ մետաղներ և ոչ մետաղներ (օրինակ, Ti, Zn, Si, B ևն): Ջրածնի մթնոլորտում 400—500°C-ում առաջացնում է սպիտակ, բյուրեղական հիդրիդ՝ $MgH_2$: Մ. օդում պատվում է օքսիդի պաշտպանիչ շերտով և փայլազրկվում: Օդում տաքացնելիս (600—650°C) բոցավառվում է, այրվում կուրացնող սպիտակ բոցով, առաջացնելով *մագնեզիումի օքսիդ*, մասամբ նաև նիտրիդ: Դրա մանրափոշին սպիտակ է, օդից խոնավություն կլանելով մասամբ փոխարկվում է Մ-ի հիդրօքսիդի՝ $Mg(OH)_2$ և կարբոնատի $MgCO_3$: Տաքացնելիս Մ. միանում է հալոգենների հետ (խոնավ քլորի հետ՝ առանց տաքացնելու): Մ-ի քլորիդն առաջացնում է կայուն բյուրեղահիդրատներ՝ $MgCl_2 \cdot H_2O$ և $MgCl_2 \cdot 6H_2O$, որոնցից երկրորդն ստանում են ծովաջրից և օգտագործում մագնեզիումական ցեմենտներ և Մ. ստանալու, փայտը հրակայուն դարձնելու համար և մանածագործության մեջ: Մ. ծծմբի կամ $SO_2$-ի և $H_2S$-ի հետ տաքացնելիս (500—600°C) առաջացնում է սուլֆիդ (MgS), ազոտի, ֆոսֆորի, ածխածնի և սիլիցիումի հետ՝ նիտրիդ ($Mg_3N_2$), ֆոսֆիդ ($Mg_3P_2$), կարբիդներ ($MgC_2$, $Mg_2C_3$) և սիլիցիդներ ($Mg_2Si$, $Mg_3Si_2$): Այս միացությունները լուծվում են նոսր թթուներում՝ անջատելով համապատասխան ոչ մետաղների ջրածնական միացությունները: Մետաղների մեծ մասի հետ Մ. առաջացնում է ներմետաղական միացություններ (տես *Մագնեզիումի համաձուլվածքներ*): Ալկալիները Մ-ի հետ չեն փոխազդում, սակայն աղերի լուծույթներից անջատվում է ջրում վատ լուծվող հիդրօքսիդը՝ $Mg(OH)_2$: Մ-ի աղերից շատերը ջրում լավ են լուծվում (*մագնեզիումի սուլֆատ*, $MgCl_2$ ևն), վատ՝ ֆտորիդը, կարբոնատը, ֆոսֆատը ևն:

Արդյունաբերության մեջ Մ. ստանում են ջրազրկված կառնալիտի ($KCl \cdot MgCl_2 \cdot 6H_2O$) կամ Մ-ի անջուր քլորիդի հալույթի (720—750°) էլեկտրոլիզով: Էլեկտրոլիտում, որը պարունակում է նատրիումի, կալիումի, կալցիումի քլորիդներ և ֆտորիդներ, $MgCl_2$-ի պարունակություն 5—7%-ից պակաս չպետք է լինի: Հալված Մ. հավաքվում է էլեկտրոլիտի մակերեսին և հեռացվում պարբերաբար (պարունակում է մինչև 2% խառնուրդներ): Անհրաժեշտության դեպքում ստացված Մ. մաքրում են վակուումում սուբլիմացնելով (մինչև 99,999% Մ.): Մ. օգտագործում են համաձուլվածքների արտադրության, դժվար վերականգնվող և ցրված տարրեր (Ti, Zr, Hf, U ևն) ստանալու համար: Մ-ի փոշու խառնուրդները օքսիդիչների հետ լուսավորող և հրկիզող նյութեր են: Լայնորեն օգտագործվում են նաև Մ-ի միացությունները: *Մագնեզիումօրգանական միացությունները* օգտագործվում են օրգ. սինթեզում:

**ՄԱԳՆԵԶԻՈՒՄԻ ՀԱՄԱՁՈՒԼՎԱԾՔՆԵՐ**, համաձուլվածքներ, որոնց հիմնական բաղադրիչը *մագնեզիումն* է: Առավել ամուր և կոռոզիակայուն Մ. հ. մշակվում են մագնեզիում-մետաղ համակարգի հիման վրա: Մ. հ. բաժանվում են 2 հիմնական խմբի. ձուլման համաձուլվածքներ՝ ձևավոր ձուլվածքների արտադրության համար, և դեֆորմացվող համաձուլվածքներ՝ մամլումով, գլոցումով, կռումով և դրոշմումով կիսաֆաբրիկատների արտադրության համար: Արդյունաբերական Մ.հ-ի մեջ պարունակվում են Al-ի, Zn-ի, Mn-ի, Zr-ի, Th-ի, Ag-ի, Cd-ի, Li-ի, Be-ի, հազվագյուտ մետաղների և այլնի հավելանյութեր, որոնց ընդհանուր քանակությունը առավել լեգիրված Մ. հ-ում հասնում է 10—14%-ի: Վնասակար խառնուրդներ են Ni-ը, Fe-ը, Si-ը և Cu-ը, որոնք նվազեցնում են Մ. հ-ի կոռոզիակայունությունը: Մ. հ. ամենաթեթև մետաղական կոնստրուկցիոն նյութերն են, որոնց խտությունը, բաղադրությունից կախված, փոփոխվում է 1360—2000 *կգ/մ³* սահմաններում: Ամենափոքր խտությունն ունեն մագնեզիում-լիթիումային համաձուլվածքները: Առավել կիրառելի Մ. հ-ի խտությունը 1760—1810 *կգ/մ³* է, այսինքն՝ մոտավորապես 4 անգամ փոքր է պողպատի խտությունից և 1,5 անգամ՝ ալյումինի համաձուլվածքների խտությունից: Մ. հ-ի ջերմային ընդարձակման գործակիցը միջին հաշվով 10—15%-ով ավելի մեծ է, քան ալյումինի համաձուլվածքներինը: Մ. հ-ի առաձգականության մոդուլը հավասար է 41—45 *Գն/մ²* (4100—4500 *կգ/մմ²*): Ցածր ջերմաստիճանների դեպքում Մ. հ-ի առաձգականության մոդուլը, հոսունության և ամրության սահմանները մեծանում են, իսկ երկարացումը և հարվածային ճկունությունը՝ նվազում: Մ. հ. լավ մշակվում են կտրումով: Կիրառվում են ավիացիայում, հրթիռաշինության, ավտոմոբիլային արդյունաբերության մեջ, լուսանկարչական և կինոսարքավորումների արտադրության համար: Մ. հ-ից պատրաստված դետալները կարող են աշխատել կրիոգենային և բարձր ջերմաստիճաններում:

*Գրկ.* Рейнор Г. В., Металловедение магния и его сплавов, пер. с англ., [М.], 1964.

**ՄԱԳՆԵԶԻՈՒՄԻ ՀԱՆՔԱՆՅՈՒԹԵՐ**, բնական միներալային առաջացումներ, որոնցում մագնեզիումի պարունակությունը բավարար է նրա տնտեսապես շահավետ կորզման համար: Մագնեզիումը մտնում է ավելի քան հարյուր միներալի բաղադրության մեջ, այդ թվում՝ բրուսիտի[$Mg(OH)_2$, 41,7% Mg], մագնեզիտի ($MgCO_3$, 28,8%), դոլոմիտի ($MgCO_3 \cdot CaCO_3$, 18,2%), կիզերիտի ($MgSO_4 \cdot H_2O$, 17,6%), բիշոֆիտի ($MgCl_2 \cdot 6H_2O$, 12,0%), լանգբեյնիտի ($2MgSO_4 \cdot K_2SO_4$, 11,7%): Մ. հ-ի մեջ կարևոր տեղ են գրավում մագնեզիումակալիումական աղերի հանքավայրերը: Մագնեզիտի խոշոր հանքավայրեր են հանդիպում մետամորֆացված դոլոմիտներում: Նրա կոնտակտային մետամորֆիզմի դեպքում առաջանում են մագնեզիումի ամենաբարձր պարունակությամբ հումքի՝ բրուսիտի, կուտակումներ: Որպես մագնեզիումի աղբյուր անընդհատ աճում է նաև ծովային ջրի (4 % Mg չոր մնացորդում) դերը՝ կայուն բաղադրությամբ և անսահմանափակ պաշարներով: ՍՍՀՄ-ում տեղաբաշխված են մագնեզիումակալիումական աղերի խոշորագույն ավազաններ (Ուրալ, Բելոռուսիա, Նախակարպատներ): Արտասահմանում հատկապես հայտնի են Շտասֆուրտի աղաբեր ավազանը (ԳՖՀ և ԳԴՀ) և ԱՄՆ-ի հարավի հանքավայրերը:

**ՄԱԳՆԵԶԻՈՒՄԻ ՍՈՒԼՖԱՏ**, մագնեզիումի ծծմբաթթվական չեզոք աղը: $MgSO_4$, անգույն բյուրեղային նյութ է, խտությունը՝ 2660 *կգ/մ³*, 1100—1200°C-ում քայքայվում է: 100 *գ* ջրում լուծ-

վում է 33,7 գ Մ. ս. (20°C): Առաջացնում է 1—7 և 12 մոլեկուլ ջուր պարունակող բյուրեղահիդրատներ: Ջրային լուծույթներից բյուրեղանում է $MgSO_4 \cdot 7H_2O$ (20°C): Բնության մեջ հանդիպում է կիզերիտ՝ $MgSO_4 \cdot H_2O$, և էպսոմիտ՝ $MgSO_4 \cdot 7H_2O$ (դառը աղ) միներալների ձևով: Մ.ս. ստանում են ծովային աղաջրերից և աղային պինդ նստվածքներից: Օգտագործում են $SO_2$ ստանալու համար (ծծմբական թթվի արտադրություն), ինչպես նաև ցեմենտների արտադրությունում, տեքստիլ, թղթի արդյունաբերության, գյուղատնտեսության մեջ: Բ ժ շ կ ու թ յ ա ն մեջ կիրառվում է որպես ցավը հանգստացնող, հակաջղաձգային, սպազմոլիտիկ, արյան ճնշումն իջեցնող միջոց: Փոքր դոզաներով Մ. ս-ի պարբերաբար ներընդունումը կանխում է աթերոսկլերոզի զարգացումը:

**ՄԱԳՆԵԶԻՈՒՄԻ ՕՔՍԻԴ**, MgO, անգույն բյուրեղային նյութ. խտությունը՝ 3580 *կգ/մ³*, հալ. ջերմաստիճանը 2800°C, եռմանը՝ 3600°C: Ջրում քիչ է լուծվում: Բնության մեջ հանդիպում է հազվագյուտ պերիկլազ միներալի ձևով: Հիմնային օքսիդ է, լուծվում է թթուներում (նախօրոք շիկացրածը չի լուծվում): Արդյունաբերության մեջ ստանում են մագնեզիտի կամ դոլոմիտի թրծմամբ, $MgSO_4$-ի ջերմային քայքայմամբ և այլ եղանակներով: Օգտագործվում է հրակայուն նյութերի, ցեմենտի, ռետինի արդյունաբերության, ինչպես նաև բժշկության մեջ՝ ստամոքսահյութի թթվությունն իջեցնելու համար և թթուներով թունավորվելու դեպքում: Տես նաև *Մագնեզիում*:

**ՄԱԳՆԵԶԻՈՒՄՕՐԳԱՆԱԿԱՆ ՄԻԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, մոլեկուլում ածխածին-մագնեզիում կապ պարունակող օրգ. նյութեր: Հայտնի են $R_2Mg$ և RMgX տիպի Մ. մ., որտեղ R-ը օրգ. ռադիկալն է, X-ը հալոգենը: Մագնեզիումի երկարիլ և երկալկիլ միացությունները թթվածնի, ածխաթթվի և խոնավության առկայության պայմաններում ինքնաբոցավառվող, բյուրեղական նյութեր են: Օրգ. սինթեզում չեն օգտագործվում:

Խառը Մ. մ.՝ Գրինյարի ռեակտիվները, մագնեզիումի ալկիլ և արիլհալոգենիդներն են: Ֆ. *Գրինյարը* (1900) առաջինը պարզեց, որ բացարձակ (ջրազուրկ) եթերում մագնեզիումը միանում է ալկիլ և արիլհալոգենիդների (RX) հետ, առաջացնում եթերում լուծվող միացություններ: Լուծույթում խոնավության և թթվածնի բացակայության դեպքում խառը Մ. մ. կայուն են, լուծույթից անջատելիս՝ անկայուն, այդ պատճառով օգտագործվում են նրանց լուծույթները: Վինիլհալոգենիդները ($CH_2{=}CHX$) մագնեզիումի հետ միանում են տետրահիդրաֆուրանում: Մագնեզիումի ացետիլենիլհալոգենիդներն ստացվում են ալկիլմագնեզիումի հալոգենիդների և ացետիլենի ածանցյալների (օրինակ, ֆենիլ) փոխազդմամբ (ըստ Ժ. Ն. Իոցիչի): Խառը Մ. մ. լայնորեն օգտագործվում են օրգ. սինթեզում (տես *Գրինյարի ռեակցիա*): Արդյունաբերության մեջ Մ. մ-ի միջոցով ստանում են հոտավետ նյութեր, դեղանյութեր և սիլիցիումօրգանական նյութեր:

**ՄԱԳՆԵՍԻԱ**, հնագույն քաղաք Լիդիայում, Սիպյուլոս լեռան մոտ, Հերմոս գետի հովտում: Մ. թ. ա. 190-ին Մ-ի մոտ տեղի ունեցած ճակատամարտում հռոմեացիների կրկնակի պակաս զորքը վճռական հաղթանակ տարավ Սելևկյան թագավոր Անտիոքոս III-ի զորքերի նկատմամբ: Ճակատամարտից հետո վերականգնվեց Մեծ Հայքի, Ծոփքի, Փոքր Հայքի հայկ. թագավորությունների անկախությունը:

**ՄԱԳՆԵՏԻՏ**, մ ա գ ն ի ս ա կ ա ն ե ր կ ա թ ա ք ա ր, միներալ: Քիմ. բաղադրությունը՝ $FeFe_2O_4$ կամ $Fe_3O_4$, պարունակում է 31% FeO և 69% $Fe_2O_3$, 72,4% Fe: Տարբերակները. տիտանամագնետիտ՝ $TiO_2$-ի, քրոմամագնետիտ՝ $Cr_2O_3$-ի մի քանի տոկոս պարունակությամբ: Բյուրեղագիտական համակարգը խորանարդային է: Բնորոշ են օկտաեդրիկ, հազվադեպ՝ ռոմբա-դոդեկաեդրիկ բյուրեղները: Մեծ մասամբ առաջացնում է հոծ հատիկավոր, երիկամաձև, օոլիտային, դրուզային ագրեգատներ: Ուժեղ մագնիսական է: Գույնը՝ սև, փայլը՝ կիսամետաղական: Կարծրությունը՝ 5,5—6, խտությունը՝ 4800—5300 *կգ/մ³*: Լայնորեն տարածված միներալ է: Հանդիպում է երկնաքարերում, մագմատիկ ապարներում (գաբրոներում, նորիտներում, պիրոքսենիտներում), սկառնային, հիդրոթերմալ, ցրոնային և մետամորֆային հանքավայրերում: Երկաթի կարևոր հանքանյութ է:

**ՄԱԳՆԵՏՈ** (անգլ. magneto), փոփոխական հոսանքի մագնիսաէլեկտրական գեներատոր (սովորաբար ինդուկցիոն կոճի հետ համակցված), որը նախատեսված է բոցկլիչ մոմի էլեկտրոդների միջև էլեկտրական պարպումներ առաջացնելու համար: Այդ պարպումները բոցավառում են *ներքին այրման շարժիչի* գլանների բանող խառնուրդը: Մ. տեղադրվում էր ավիացիոն, տրակտորային, ավտոմոբիլային, մոտոցիկլային շարժիչների բոցկլիչ համակարգերում: XX դ. 60-ական թթ-ից չի կիրառվում:

**ՄԱԳՆԵՏՈՆ**, ատոմային և միջուկային ֆիզիկայում *մագնիսական մոմենտի* չափման միավոր: Հանդես է գալիս նաև իբրև մագնիսական մոմենտի քվանտ: Ատոմային համակարգերի նկարագրման ժամանակ օգտագործվում է Բ ո ր ի մ ա գ ն ե տ ո ն ը՝ $\mu_B = e\hbar/2m_ec = (9,2371 \pm 0,0002) \cdot 10^{-21}$ *էրգ/գս*, որտեղ e-ն էլեկտրոնի լիցքն է, $m_e$-ն՝ զանգվածը, $\hbar$-ը՝ Պլանկի հաստատունը, c-ն՝ լույսի արագությունը: Միջուկների և նուկլոնների մագնիսականությունը հարմար է նկարագրել մ ի ջ ու կ ա յ ի ն մ ա գ ն ե տ ո ն ո վ՝ $\mu = e\hbar/2M \cdot c \approx (5,0504 \pm 0,0002).10^{-24}$ *էրգ/գս*. այստեղ M-ը պրոտոնի զանգվածն է: Տարրական մասնիկների և դրանցից բաղկացած համակարգերի մագնիսական մոմենտը քվանտացված է և բազմապատիկ է համապատասխան մագնետոնի մեծությանը: Ատոմների և մասնիկների մագնիսականությունը պայմանավորված է ոչ միայն տարածության մեջ նրանց շարժումից առաջացած հոսանքներով, այլ նաև իրենց՝ մասնիկների սպիններով: Համաձայն *Դիրակի հավասարման*, h/2 սպինով և M զանգվածով մասնիկը կապված վիճակում ունի $\mu_p = eh/2Mc$ սպինային մագնիսական մոմենտ: Սակայն պրոտոնի մագնիսական մոմենտը հավասար է $1,41 \cdot 10^{-23}$ *էրգ/գս*$\approx 2,793\mu_p$, իսկ նեյտրոնինը՝ $\approx -1,913\mu_p$: Դիրակի տեսության հետ այս հակասությունը պայմանավորված է նրանով, որ այդ մասնիկները բարդ գոյացություններ են:

*Է. Զուքարյան*

**ՄԱԳՆԵՏՐՈՆ** [<հուն. μαγνῆ(τις) — մագնիս և *էլեկ(տրոն)*], բառի սկզբնական և լայն իմաստով՝ կոաքսիալ գլանային *դիոդ*, որը տեղադրված է իր առանցքով ուղղված մագնիսական դաշտում: Էլեկտրոնային տեխնիկայում՝ գերբարձր հաճախականության իմպուլսային և անընդհատ տատանումների գեներացման սարք, որում էլեկտրոնների փոխազդեցությունը գերբարձր հաճախականության դաշտի էլեկտրական բաղադրիչի հետ տեղի է ունենում այնպիսի տարածության մեջ, որտեղ հաստատուն մագնիսական դաշտն ուղղահայաց է հաստատուն էլեկտրական դաշտին: «Մ.» տերմինն առաջարկել է ամերիկացի ֆիզիկոս Ա. Հալը (A. Hull): Կառուցվածքային առանձնահատկությունների և բարձր օ. գ. գ-ի (մինչև 80%) շնորհիվ լայն տարածում են գտել բազմառեզոնատորային Մ-ները (նկ.): Կիրառվում է հիմնականում ռադիոլոկացիոն սարքավորման մեջ:




Պ ա ր զ ա գ ու յ ն կ ա ռ ու ց վ ա ծ ք ի բ ա զ մ ա ռ ե զ ո ն ա տ ո ր ա յ ի ն մ ա գ ն ե տ ր ո ն (ձախից՝ արտաքին տեսքը, աջից՝ կտրվածքը). *1.* անոդային բլոկ 8 ռեզոնատորներով, *2.* ռեզոնատոր, *3.* անոդային բլոկի լամել, *4.* հանգույց մետաղե օղակի ձևով, *5.* կաթոդ, *6.* կաթոդի տաքացիչի արտանցիչներ, *7.* ռադիատոր, *8.* կապի օղակ, *9.* ձող

**ՄԱԳՆԻՍ** [հուն. μαγνῆτις, < Μαγνῆτις λίθος — բառացիորեն՝ Մագնեսիայի (հնագույն քաղաք Փոքր Ասիայում) քար], մագնիսացվածությամբ օժտված, այսինքն՝ *մագնիսական դաշտ* ստեղծող մարմին, որն ընդունակ է ձգելու երկաթը, նիկելը ևն: Պատրաստում են մագնիսական երկաթաքարից, մագնիսակարծր նյութերից՝ պայտի, ձողի ձևով: Ազատ շարժվող Մ-ի

(օրինակ, կողմնացույցի մագնիսական սլաքի) բևեռները միացնող գիծը Երկրի մագնիսական դաշտում ուղղվում է միջօրեականով: Կիրառվում է տեխնիկայում՝ իբրև հաստատուն մագնիսական դաշտի աղբյուր: Օգտագործվում են նաև *էլեկտրամագնիսներ*:

**ՄԱԳՆԻՍԱԴԻՄԱԴՐՈՒԹՅՈՒՆ**, մագնիսառեզիստիվ էֆեկտ, հաղորդչի (կիսահաղորդչի) էլեկտրական դիմադրության փոփոխությունն արտաքին մագնիսական դաշտի ազդեցությամբ: Պատկանում է *գալվանամագնիսական երևույթների* խմբին: Տարբերում են լայնական և երկայնական Մ.: Լայնական Մ-յան դեպքում հոսանքի հարթությունն ուղղահայաց է մագնիսական դաշտի ուղղությանը, իսկ երկայնականի դեպքում հոսանքն ուղղված է դաշտի ուղղությամբ: Մ-յան պատճառը լիցքակիրների հետագծերի կորացումն է մագնիսական դաշտում *Լորենցի ուժի* ազդեցությամբ: Թույլ մագնիսական դաշտում Մ. համեմատական է դաշտի լարվածության քառակուսուն: Ուժեղ մագնիսական դաշտում լայնական Մ-յան վարքն էապես կախված է բյուրեղի տեսակից: Որոշ բյուրեղներում (In, Al, Na, Li) Մ. հագեցման է հասնում (դառնում անկախ դաշտի լարվածությունից) բոլոր ուղղություններով, մի խումբ բյուրեղներում (Bi, Sb, W, Mo) հագեցման չի հասնում, մեծ թվով բյուրեղներում (Cu, Ag, Au, Ga, Pt ևն) դիտվում է Մ-յան հագեցում որոշակի ուղղություններով և հագեցման բացակայություն՝ այլ, հաճախ շատ մոտ ուղղություններով: Երկայնական Մ. բոլոր մետաղներում ձգտում է հագեցման: Մ. կիրառվում է բյուրեղային ցանցից հոսանքակիրների ցրման մեխանիզմի և էլեկտրոնային էներգետիկական սպեկտրի հետազոտման, ինչպես նաև մագնիսական դաշտի չափման համար: *Ա. Կիրակոսյան*

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ԱՐԱՏԱՆՇՈՒՄ**, տես *Արատանշում*:

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ԳՈՐԾԱՐԿԻՉ**, փոփոխական հոսանքի էլեկտրական անջատիչ. նախատեսված է գլխավորապես կարճ միացված ռոտորով եռաֆազ ասինխրոն էլեկտրաշարժիչների հեռագործարկման, կանգնեցման ու պաշտպանության համար: Բաղկացած է *կոնտակտորից* (ունի 3 ուժային կոնտակտ և 1—5 բլոկ-կոնտակտներ), կոճակային պոստից և ջերմային ռելեից: Մ. գ-ի կոնտակտային համակարգը գործի է գցվում էլեկտրամագնիսական հաղորդակից: Ռևերսիվ Մ. գ. ունի երկու կոնտակտոր՝ միացված մեխանիկական բլոկավորմամբ, որը բացառում է դրանց միաժամանակյա միացումը, ապահովում շարժիչի պտտման ուղղության փոփոխությունը՝ ռևերսը: Մ. գ-ները հաշվարկված են ժամում 150—3000 միացում հաճախականությամբ աշխատելու համար:




Մագնիսական գործարկիչի էլեկտրական սխեման. ԳԿ—գլխավոր կոնտակտներ, ՋՌ—ջերմային ռելե, Է—էլեկտրաշարժիչ, ՋՌԿ—ջերմային ռելեի կոնտակտներ, ՌՓ—գլխավոր կոնտակտների ռելեի փաթույթներ, ԲԿ—բլոկավորման կոնտակտներ, ԿԿ—կոճակային կետ

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ԴԱՇՏ**, *էլեկտրամագնիսական դաշտի* դրսևորման ձև: Առանձնահատկությունն այն է, որ ազդում է միայն լիցքավորված շարժվող մասնիկների ու մարմինների, հոսանքակիր հաղորդիչների և *մագնիսական մոմենտ* ունեցող մարմինների վրա: «Մ. դ.» տերմինը մուծել է Մ. *Ֆարադեյը*: Մ. դ-ի աղբյուր են մագնիսացած մարմինները, հոսանքակիր հաղորդիչները և լիցքավորված շարժվող մարմինները: Բոլոր այդ աղբյուրների բնույթը նույնն է և պայմանավորված է լիցքավորված միկրոմասնիկների շարժումով և դրանց սեփական (սպինային) մագնիսական մոմենտի առկայությամբ: Մ. դ. է ստեղծվում նաև ժամանակի ընթացքում փոփոխվող *էլեկտրական դաշտի* շնորհիվ և, հակառակը, փոփոխվող Մ. դ. ստեղծում է փոփոխական էլեկտրական դաշտ: Մ. դ-ի քանակական բնութագրերն են *մագնիսական ինդուկցիան* և լարվածությունը (տես *Լարվածություն* մագնիսական դաշտի):

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ԸՆԿԱԼՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆ**, նյութի *մագնիսական մոմենտի* (մագնիսացվածության) և *մագնիսական դաշտի* կապը բնութագրող ֆիզիկական չափազուրկ մեծություն: Ծավալային Մ. ը. հավասար է նյութի միավոր ծավալի $\vec{I}$ մագնիսացման և մագնիսացնող դաշտի $\vec{H}$ լարվածության հարաբերությանը՝ $\varkappa = \vec{I}/\vec{H}$: Նյութի 1 *կգ*-ի (կամ 1 *գ*-ի) Մ. ը. կոչվում է տեսակարար ($\varkappa_{տես} = \varkappa/\rho$, $\rho$-ն նյութի խտությունն է), իսկ 1 մոլինը՝ մոլային ($\varkappa = \varkappa_{տես}$ M, M-ը նյութի մոլեկուլային զանգվածն է): Դիամագնիսական նյութերն ունեն բացասական, իսկ պարամագնիսական և ֆեռոմագնիսական նյութերը՝ դրական Մ. ը.: Դիամագնիսական և պարամագնիսական նյութերի Մ. ը. փոքր է ($\sim 10^{-4} - 10^{-6}$) և H-ից համարյա չի կախված, մինչդեռ ֆեռոմագնիսական նյութերի Մ. ը. հասնում է մեծ արժեքների (մի քանի տասնյակից մինչև մի քանի հզ. միավոր) և բարդ կախման մեջ է H-ից (նկ.): Այդ պատճառով ֆեռոմագնիսների համար կիրառվում է դիֆերենցիալ Մ. ը. ($\varkappa_{դ} = d\vec{I}/d\vec{H}$): Ֆեռոմագնիսի Մ. ը. H=0 դեպքում զրո չէ, այլ ունի $\varkappa_a$ արժեքը, որը կոչվում է սկզբնական Մ. ը.: H-ի մեծացմանը զուգընթաց Մ. ը. աճում է, հասնում առավելագույն արժեքի, այնուհետև նվազում: $\varkappa$(H) կորի տեսքը պայմանավորված է ֆեռոմագնիսական նյութերի մագնիսացման բարդ մեխանիզմով: Մ. ը., իբրև կանոն, կախված է ջերմաստիճանից:




Ֆեռոմագնիսի դիֆերենցիալ մագնիսական ընկալունակության կախումը մագնիսացնող դաշտի լարվածությունից

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ԹԱՂԱՆԹ**, ֆեռոմագնիսական նյութի միադոմեն հաստության (0,01-ից մինչև 10 *մկմ*) շերտ: Ստացվում է վակուումային խտացման, էլեկտրաքիմիական կամ այլ եղանակներով: Մագնիսափափուկ նյութից պատրաստված



30 մկմ

Պերմալոյից պատրաստված բարակ ֆեռոմագնիսական թաղանթի մագնիսական կառուցվածքը

Մ. թ-ում փոքրանում են համակարգի սեփական ապամագնիսացող դաշտերը, երբ թաղանթի գծային չափերն անհամեմատ մեծ են լինում հաստությունից. բացի այդ, թաղանթում հնարավոր է ստեղծել միառանցքանի մագնիսական անիզոտրոպություն: Այս առանձնահատկությունների շնորհիվ թաղանթն անիզոտրոպության ուղղությամբ ի հայտ է բերում հիստերեզիսի ուղղանկյուն օղակ, իսկ անիզոտրոպության ուղղահայաց ուղղությամբ՝ գծային օղակ: Մ. թ-ի մեկ ուրիշ առանձնահատկությունն էլ այն է, որ կարճ իմպուլսային դաշտերի ազդեցությամբ նա վերամագնիսանում է մագնիսացման վեկտորի կոհերենտ պտույտով, որը $10^{-9}$ *վրկ* տևողության պրոցես է: Էլեկտրոնամանրադիտակային հետազոտման մեթոդով բարակ Մ. թ-ի կառուցվածքն ուսումնասիրելիս հայտնաբերվել է, որ մագնիսացման վեկտորի ուղղությունը *դոմենում* կետից կետ փոխվում է և տատանումներ կատարում անիզոտրոպության ուղղության շուրջը, և որ տատանման ալիքի երկարությունը միկրոնի կարգի մեծություն է ևն: Այս հատկությունները բնորոշ են միայն ֆեռոմագնիսի թաղանթային վիճակին: Ի տարբերություն ծավալային ֆեռոմագնիսների, որոնց դոմենային սահմաններում մագնիսացման վեկտորի պտույտն ուղեկցվում է նմուշին ուղղահայաց ուղղությամբ մագնիսացման վեկտորի բաղադրիչի առաջացմամբ, Մ. թ-ում գոյություն ունեն սահմաններ, որոնցում պտույտը կատարվում է հարթության մեջ (Նեելի պտույտ), ինչպես նաև խառը սահմաններ՝ խաչաձև գծերով (նկ.): Վերոհիշյալ հատկությունների, ինչպես նաև փոքրածավալության, սպառման փոքր հզորության, ճառագայթակայունության շնորհիվ Մ. թ-ները լայն կիրառություն են գտել հաշվողական մեքենաների հիշողության տարրերում, հոլոգրաֆիայում՝

պատկերների հոլոգրաֆիկ գրառման համար: *Յա. Դողոսյան*

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ԹԱՓԱՆՑԵԼԻՈՒԹՅՈՒՆ**, *մագնիսական ինդուկցիայի* ($\vec{B}$) և մագնիսական դաշտի լարվածության ($\vec{H}$, տես *Լարվածություն մագնիսական դաշտի*) կապը բնութագրող ֆիզիկական չափազուրկ մեծություն (μ): Միավորների CGS համակարգում իզոտրոպ նյութերի $\mu=\vec{B}/\vec{H}$, իսկ SI համակարգում՝ $\mu=\vec{B}/\mu_0\vec{H}$ ($\mu_0$-ն մագնիսական հաստատունն է): Անիզոտրոպ նյութերի Մ. թ. տենզոր է: Մ. թ. *մագնիսական ընկալունակության* հետ կապված է $\mu=1+4\pi\varkappa$ (CGS) կամ $\mu=1+\varkappa$ (SI) առնչությամբ: Ֆիզիկական վակուումի դեպքում $\varkappa=0$, $\mu=1$: Դիամագնիսական նյութերի $\varkappa<0$, $\mu<1$, իսկ պարա- և ֆեռոմագնիսական նյութերի դեպքում՝ $\varkappa>0$, $\mu>1$: Եթե ֆեռոմագնիսների μ-ն չափվում է ստատիկ մագնիսական դաշտում, կոչվում է ստատիկ, իսկ եթե չափվում է փոփոխական մագնիսական դաշտում՝ դինամիկ: Ստատիկ և դինամիկ Մ. թ-ների արժեքները չեն համընկնում, որովհետև փոփոխական դաշտերում ֆեռոմագնիսների մագնիսացման վրա ազդում են մրրկային հոսանքները, մագնիսական մածուցիկությունը և ռեզոնանսային երևույթները: Ֆեռոմագնիսի Մ. թ-յան կախումը $\vec{H}$-ից բարդ է, և այն նկարագրելու համար մուծում են դիֆերենցիալ, սկզբնական և առավելագույն Մ. թ. հասկացությունները:

Գրկ. Вонсовский С. В., Магнетизм, М., 1971.

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ԻՆԴՈՒԿՑԻԱ**, մագնիսական ինդուկցիայի վեկտոր ($\vec{B}$), *մագնիսական դաշտի* հիմնական ուժային բնութագիր: Արտաքին մագնիսական դաշտի $\vec{H}$ լարվածության և նյութի I մագնիսացման հետ կապված է $\vec{B}=\vec{H}+4\pi\vec{I}$ առնչությամբ: Արտահայտվում է նաև $\vec{B}=\mu\vec{H}$ բանաձևով, որտեղ μ-ն մագնիսական թափանցելիությունն է: Մ. ի-ով որոշվում են մագնիսական դաշտում շարժվող էլեկտրական լիցքերի և հոսանքակիր հաղորդիչների վրա ազդող մագնիսական բնույթի ուժերը (տես *Լորենցի ուժ*): Միավորների միջազգային համակարգում Մ. ի-ի միավորը *տեսլան* է, իսկ CGS համակարգում՝ *գաուսը*. 1*տլ*= $10^4$ *գս*: Մ. ի. չափվում է տեսլամետրով:

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ԻՆԴՈՒԿՑԻԱՅԻ ՀՈՍՔ**, մագնիսական հոսք (Φ), *մագնիսական ինդուկցիայի* $\vec{B}$ վեկտորի հոսքը որևէ մակերևույթով: dS տարրական մակերեսով Մ. ի. հ.՝ $d\Phi=B_n dS=BdS\cos\alpha$, որտեղ $B_n=B\cos\alpha$-ն $\vec{B}$ վեկտորի պրոյեկցիան է այդ մակերեսի նորմալի ($\vec{n}$) ուղղության վրա, α-ն՝ $\vec{B}$ և $\vec{n}$ վեկտորներով կազմված անկյունը: S վերջավոր մակերևույթով Մ. ի. հ. որոշվում է $\Phi=\int_S B_n dS$ ինտեգրալով, որը փակ մակերևույթի դեպքում հավասար է զրոյի: Այդ հանգամանքը ցույց է տալիս, որ բնության մեջ մագնիսական լիցքը (մագնիսական դաշտի աղբյուր) գոյություն չունի: SI համակարգում Մ. ի. հ-ի միավորը *վեբերն* է, CGS համակարգում՝ *մաքսվելը*. 1 *վբ*= $10^8$ *մքս*:

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ԼԻՑՔ**, մագնիսական մոնոպոլ, Դիրակի մոնոպոլ (< հուն. μόνος — մեկ, միակ և πόλος — բևեռ), օժանդակ հասկացություն, որ *էլեկտրական լիցքի* նմանությամբ մուծվել է ստատիկ մագնիսական դաշտերի հաշվարկումը հեշտացնելու նպատակով: Էլեկտրամագնիսական երևույթները նկարագրող Մաքսվելի հավասարումների սիմետրիան էլեկտրական և մագնիսական մեծությունների նկատմամբ թույլ է տալիս ենթադրել, որ դրական և բացասական էլեկտրական լիցքերի նման կարող են առանձին-առանձին գոյություն ունենալ տարբեր բևեռայնության մագնիսական լիցքեր, որոնք իրենց շուրջն ստեղծում են մագնիսական դաշտ: Սակայն փորձը ցույց է տալիս, որ մագնիսական դաշտ ստեղծվում է միայն էլեկտրական լիցքերի շարժման կամ մագնիսական *դիպոլի* առկայության դեպքում: Դաշտի դասական տեսությունը չի բացառում վարկածային Մ. լ-երի գոյությունը և ոչ մի սահմանափակում չի դնում դրանց մեծության (μ) վրա, մինչդեռ ըստ քվանտային տեսության, ինչպես ցույց է տվել Պ. *Դիրակը* (1931), պետք է տեղի ունենա $e\mu=\frac{1}{2}n\hbar c$ առնչությունը, որտեղ e-ն էլեկտրոնի լիցքն է, ħ-ը՝ Պլանկի հաստատունը, c-ն՝ լույսի արագությունը, $n=0,\pm1,\pm2,\ldots$: Մ. լ-ի նվազագույն արժեքը 68,5 անգամ մեծ է էլեկտրոնի լիցքից, ուստի արագ շարժվող մոնոպոլի հետքը պետք է պարզորոշ նկատվեր Վիլսոնի խցիկում կամ բշտիկային խցիկում: Սակայն Մ. լ-ի հայտնաբերման բոլոր փորձերն առայժմ տալիս են բացասական արդյունք: *Կ. Իսպիրյան*

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ԽՈՆԱՐՀՈՒՄ**, անկյուն մագնիսական և աշխարհագրական միջօրեականների միջև Երկրի մակերևույթի տվյալ կետում: Աշխարհագրական միջօրեականի ուղղությունը, որպես օրենք, որոշում են գիրոթեոդոլիտներով կամ աստղաբաշխական դիտարկումների օգնությամբ, մագնիսական միջօրեականինը՝ սարքերով (դեկլինոմետրեր, մագնիսամետրեր), որոնք հնարավորություն են ընձեռում որոշել մագնիսական սլաքի դիրքը դիտարկման տեղում: Եթե մագնիսական սլաքի հյուսիսային եզրը աշխարհագրական միջօրեականի ուղղությունից շեղվում է դեպի արևելք, ապա Մ. խ. համարում են արևելյան (դրական), եթե դեպի արևմուտք՝ արևմտյան (բացասական): Մ. խ. լայնորեն կիրառում են ծովա- և օդագնացության մեջ, գեոդեզիական ու մարկշեյդերական պրակտիկայում, ռազմական գործում:

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՀԱԳԵՑՈՒՄ**, պարամագնիսական և ֆեռոմագնիսական նյութերի այն վիճակը, երբ մագնիսացվածությունը հասնում է սահմանային արժեքին (հագեցման մագնիսացվածություն) և այլևս չի փոփոխվում մագնիսացնող դաշտի լարվածության հետագա մեծացման դեպքում: Ֆեռոմագնիսական նյութերում մագնիսացվածության սահմանային արժեքը ձեռք է բերվում այսպես կոչված տեխ. մագնիսացման պրոցեսների (դոմենների սահմանների շեղում, նմուշի մագնիսացման վեկտորի պտույտ մագնիսացնող դաշտի ուղղությամբ) և պարապրոցեսի (արտաքին դաշտի ուղղությամբ դասավորված սպինների թվի ավելացում հակազուգահեռ դիրքորոշում ունեցող սպինների հաշվին) ավարտման դեպքում: Գործնականում սովորաբար ստանում են տեխ. Մ. հ. (20°C-ի և մի քանի *է*-ից մինչև ~$10^4$ *է* դաշտերի դեպքում), որովհետև պարապրոցեսի իրականացման համար պահանջվում են շատ ուժեղ դաշտեր: Պարամագնիսական նյութերում Մ. հ-մանը մոտ վիճակ ձեռք է բերվում ~10 *կէ* դաշտի և ~1 K ջերմաստիճանի դեպքում:

Գրկ. Киренский Л. В., Магнетизм, 2 изд., М., 1967; Вонсовский С. В., Магнетизм, М., 1971.

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՀԱՆՈՒՅԹ**, *Երկրի մագնիսականության* տարրերի սիստեմատիկ չափումները և դրանց տվյալներով մագնիսական քարտեզների կազմումը: Մ. հ. լինում է ընդհանուր և մանրամասն:

Ընդհանուր Մ. հ. կատարվում է մեծ մակերեսների վրա՝ չափման կետերի համեմատաբար նոսր ցանցի դեպքում (կետերի հեռավորությունը միմյանցից՝ տասնյակ և հարյուրավոր *կմ*), և հնարավորություն է ընձեռում ուսումնասիրել Երկրի մագնիսական դաշտի տեղաբաշխման հիմնական օրինաչափությունները: Ընդհանուր Մ. հ-ի հիման վրա կազմված քարտեզները խիստ անհրաժեշտ են ծովա- և օդագնացության, խոշոր մագնիսական անոմալիաների հայտնաբերման, Երկրի մագնիսականության տարրերի դարավոր ընթացքի ուսումնասիրության համար: Մանրամասն Մ. հ-ի (հեռավորությունը կետերի միջև՝ 1 *մ*-ից մինչև մի քանի *կմ*) տվյալները կիրառվում են երկրաբանական քարտեզագրության մեջ և մետաղային հանքավայրերի որոնողական աշխատանքներում: Մ. հ-ի դեպքում սովորաբար չափում են Երկրի մագնիսական դաշտի լրիվ լարվածության վեկտորի մոդուլը, սակայն հետախուզության նպատակների համար հաճախ սահմանափակվում են այդ դաշտի ուղղաձիգ բաղադրիչի հարաբերական որոշմամբ: Մ. հ. իրականացվում է տարբեր տիպի մագնիսամետրերով, որոնք տեղադրվում են արբանյակների, ինքնաթիռների, ոչ մագնիսական նավերի և տրանսպորտային այլ միջոցների վրա: Ժամանակի մեջ Երկրի մագնիսական դաշտի փոփոխությունների (դաշտի դարավոր ընթացքի) անընդհատ դիտարկումները կատարվում են մագնիսական դիտակայանների ցանցի օգնությամբ:

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՀԻԴՐՈԴԻՆԱՄԻԿԱ**, *ֆիզիկայի* բաժին, որն ուսումնասիրում է էլեկտրահաղորդիչ հեղուկի կամ գազի (հեղուկ մետաղներ, պլազմա) փոխազդե-

ցությունը էլեկտրամագնիսական դաշտի հետ: Մ. հ-ի տեսական հիմքը *հիդրոդինամիկայի* հավասարումներն են և *Մաքսվելի հավասարումները* էլեկտրամագնիսական դաշտի համար: Մ. հ-ի բնագավառի հետազոտությունները կապված են պլազմայի հատկությունների (մասնավորապես, Արեգակի, աստղերի, տիեզերական տարածության պլազմայի) ուսումնասիրման, կառավարվող ջերմամիջուկային ռեակցիաների իրագործման պրոբլեմի, հեղուկ մետաղ մղող մագնիսահիդրոդինամիկական պոմպերի, մագնիսահիդրոդինամիկական գեներատորների և պլազմային ռեակտիվ շարժիչների նախագծման ու կառուցման հետ: Մ. հ-ի հիմնական դրույթները 1940-ական թթ. ձևակերպել է շվեդ ֆիզիկոս Հ. *Ալվենը*:

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՁԱՅՆԱԳՐՈՒՄ**, *ձայնագրման* եղանակ, որը հիմնված է ֆեռոմագնիսական նյութերի՝ մնացորդային մագնիսացածությունը պահպանելու հատկության վրա: Մ. ձ-ման ժամանակ ձայնակիրը (մագնիսական թաղանթ կամ ժապավեն) հավասարաչափ շարժվում է գրի




Մագնիսական ձայնագրման տեսակները. *ա*. լայնական, *բ*. լայնական-երկայնական, *գ*. երկայնական

առնող մագնիսական գլխիկի միջով. ձայնակրի տարրերը մագնիսանում են տարբեր չափով՝ կախված գլխիկի ստեղծած մագնիսական դաշտի լարվածության ակնթարթային արժեքից: Այսպիսով, ձայնակրի վրա առաջանում է մագնիսական ֆոնոգրամ: Տարբերում են լայնական, երկայնական և լայնական-երկայնական Մ. ձ. (նկ.): Մ. ձ-ման առավելությունն այն է, որ ջնջող մագնիսական գլխիկի միջոցով կարելի է վերացնել նախկին ձայնագրությունը: Կիրառվում է ռադիոհաղորդումներում, կինեմատոգրաֆիայում, ավտոմատիկայում և հեռուստամեխանիկայում: Տես նաև *Մագնիտոֆոն*, *Դիկտոֆոն*:

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՄԱԾՈՒՑԻԿՈՒԹՅՈՒՆ**, 1. ֆեռոմագնիսականության մեջ (կոչվում է նաև մագնիսական հետազդեցություն), ֆեռոմագնիսական նյութի մագնիսական բնութագրերի (մագնիսացվածություն, թափանցելիություն ևն) փոփոխության ետ մնալը (ըստ ժամանակի) արտաքին մագնիսական դաշտի լարվածության փոփոխությունից: Դաշտի լարվածության փոփոխությունից հետո նմուշի մագնիսացվածության հաստատվելը Մ. մ-յան հետևանքով տևում է $10^{-9}$ *վրկ*-ից մինչև մի քանի տասնյակ *ր* և նույնիսկ մի քանի *ժ*:

2. Մագնիսական հիդրոդինամիկայում, մագնիսական դաշտում շարժվող էլեկտրահաղորդիչ հեղուկների և գազերի հատկությունները բնութագրող մեծություն:

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՄԻԱՎՈՐՆԵՐ**, տես *Էլեկտրական և մագնիսական միավորների համակարգեր*:

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՄՈՄԵՆՏ**, նյութի մագնիսական հատկությունները բնութագրող ֆիզիկական մեծություն: Միմյանցից անփոփոխ $\vec{l}$ հեռավորության վրա գտնվող երկու *մագնիսական լիցքերից* (m) բաղկացած պարզագույն մագնիսի (մագնիսական դիպոլի) Մ. մ. որոշվում է $\vec{M}=m\vec{l}$ առնչությամբ: Մագնիսացած մարմնի Մ. մ. հավասար է մարմինը կազմող տարրական մագնիսների Մ. մ-ների երկրաչափական գումարին: Մ. մ-ով օժտված են էլեկտրական հոսանքները, տարրական մասնիկները, ատոմային միջուկները, ատոմների և մոլեկուլների էլեկտրոնային թաղանթները: Հոսանքի Մ. մ. համեմատական է հոսանքի ուժի և հոսանքակիր հաղորդչի կոնտուրի ընդգրկած մակերեսի արտադրյալին: Տարրական մասնիկների Մ. մ. պայմանավորված է իրենց սեփական մեխանիկական մոմենտի՝ *սպինի* գոյությամբ: Միջուկի Մ. մ. առաջանում է պրոտոնների և նեյտրոնների սեփական (սպինային) Մ. մ-ների, ինչպես նաև միջուկի ներսում դրանց ուղեծրային շարժման հետ կապված Մ. մ-ների գումարումից: Ատոմների և մոլեկուլների էլեկտրոնային թաղանթների Մ. մ. պայմանավորված է էլեկտրոնների սպինային և ուղեծրային Մ. մ-ներով:

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՆՅՈՒԹԵՐ**, նյութեր, որոնք *մագնիսական դաշտում* տեղադրվելիս էապես փոխում են այդ դաշտի արժեքը: Դեռևս հնում հայտնի է եղել բնական մագնիսացած միներալ *մագնետիտը*, որից ավելի քան 2 հզ. տարի առաջ մագնիսական կողմնացույցի սլաքներ էին պատրաստում Չինաստանում: Մագնետիտից զգալիորեն ավելի ուժեղ մագնետիկ է երկաթը, որի գործնական կիրառությունը իբրև մագնիսական նյութ սկսվել է XIX դ., Հ. Էրստեդի, Մ. Ֆարադեյի, Է. Լենցի և այլոց հայտնագործություններից հետո: 1900-ից էլեկտրատեխնիկայում սկսել են կիրառել երկաթ-սիլիցիումային պողպատներ, մի փոքր ուշ՝ թույլ դաշտերում հեշտ մագնիսացող Fe—Ni համաձուլվածքները, որոնք լայն տարածում են գտել կապի տեխնիկայում: Ֆեռոմագնիսականության տեսության զարգացումը զգալիորեն արագացրեց նոր Մ. ն-ի մշակման պրոցեսը: XX դ. կեսին երևան եկան օքսիդային Մ. ն.՝ *ֆերիտները*, որոնք սկսեցին կիրառվել բարձր և գերբարձր հաճախականությունների տեխնիկայում: Մագնիսացման և վերամագնիսացման պրոցեսների հեշտության տեսակետից Մ. ն. հիմնականում բաժանվում են մագնիսափափուկ և մագնիսակոշտ նյութերի: Մագնիսափափուկ նյութերն օգտագործվում են փոփոխական պարամետրերով մագնիսական շղթաներում (ռելե, տրանսֆորմատոր, էլեկտրական գեներատոր և շարժիչ) իբրև մագնիսահաղորդիչ, իսկ մագնիսակոշտ նյութերը որոնք օժտված են մնացորդային մագնիսացվածություն պահպանելու հատկությամբ, ծառայում են հաստատուն մագնիսներ պատրաստելու համար: Մ. ն-ի առանձին խմբեր են կազմում նաև մագնիսական, ջերմամագնիսական համաձուլվածքները, մագնիսաստրիկցիոն նյութերը, մագնիսադիէլեկտրիկները ևն: Մ. ն-ի որակն անընդհատ բարելավվում է՝ ավելի մաքուր ելանյութերի կիրառման և արտադրության տեխնոլոգիայի կատարելագործման շնորհիվ: Ներկայումս մշակվում են այնպիսի Մ. ն., որոնցում մագնիսական հատկությունները զուգակցվում են էլեկտրական, օպտիկական, ջերմային հատկությունների հետ:

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՇՂԹԱ**, մագնետիկների (նյութերի մագնիսական հատկությունների դիտարկման դեպքում գործածվող տերմին) հաջորդականություն, որոնցով մագնիսական հոսք է անցնում: Տարբերում են փակ Մ. շ-ներ, որոնցում մագնիսական հոսքը համարյա ամբողջությամբ անցնում է ֆեռոմագնիսական մարմիններով և բացակով (օրինակ, օդային) Մ. շ-ներ: Եթե մագնիսական հոսքը գրգռվում է հաստատուն մագնիսով, շղթան կոչվում է բևեռացված, իսկ առանց հաստատուն մագնիսի Մ. շ.՝ չեզոք: Էլեկտրական շղթայի և Մ. շ-ի ձևական նմանությունը թույլ է տալիս երկուսի դեպքում էլ օգտվել մաթ. նույն ապարատից: Մ. շ-ի սկզբունքային առանձնահատկությունն այն է, որ անփոփոխ հոսքի դեպքում նրանում ջոուլյան ջերմություն չի անջատվում: Մ. շ. հասկացությունը լայնորեն կիրառվում է տրանսֆորմատորների, էլեկտրական մեքենաների, ռելեների, էլեկտրատեխնիկական հաշվարկների ժամանակ:

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՌԵԶՈՆԱՆՍ**, փոփոխական էլեկտրամագնիսական դաշտի էներգիայի ընտրողական (ռեզոնանսային) կլանումը արտաքին հաստատուն մագնիսական դաշտում գտնվող նյութում (էլեկտրոնների կամ միջուկների համակարգում): $H_0$ մագնիսական դաշտի ազդեցությամբ տեղի է ունենում էլեկտրոնների կամ միջուկների համակարգի էներգիայի մակարդակների ճեղքում (*Զեեմանի երևույթ*): Երկու հարևան ենթամակարդակների հեռավորությունը որոշվում է $\Delta E = \gamma\hbar H_0$ առնչությամբ, որտեղ $\gamma$-ն մագնիսամեխանիկական հարաբերությունն է, $\hbar$-ը՝ Պլանկի հաստատունը: $\hbar\omega = \Delta E$ էներգիայի փոփոխական էլեկտրամագնիսական ալիքի ազդեցությամբ զեեմանյան ենթամակարդակների միջև տեղի է ունենում անցում, որը հանգեցնում է էլեկտրամագնիսական ալիքի ռեզոնանսային կլանման: *Ռեզոնանսի* պայմանն է՝ $\hbar\omega = \Delta E = \gamma\hbar H_0$ կամ $\omega = \gamma H_0$: Մ. ռ-ի $\omega$ հաճախականությունը որոշվում է $\gamma$-ի մեծությամբ: Ազատ էլեկտրոնի համար $\gamma_e = 1{,}7609 \cdot 10^7$ *վրկ*$^{-1}$·*է*$^{-1}$, պրոտոնի համար՝ $\gamma_p = 2{,}670 \cdot 10^4$ *վրկ*$^{-1}$·*է*$^{-1}$: Եթե էլեկտրամագնիսական էներգիան կլանում են միջուկները, Մ. ռ. կոչվում է *միջուկային մագնիսական ռեզոնանս* (ՄՄՌ), իսկ եթե Մ. ռ. պայմանավորված է պարամագնիսական նյութերի էլեկտրոնների մագնիսական մոմենտներով, այն կոչվում է *էլեկտրոնային պարամագնիսական ռեզոնանս* (ԷՊՌ): $10^3$—$10^4$ *է* լարվածության արտաքին մագնիսական դաշտում ԷՊՌ-ը տեղի է ունենում գերբարձր հա-

ճախականությունների տիրույթում ($10^9$—$10^{11}$ *հց*), իսկ ՄՄՌ-ը՝ կարճ ռադիոալիքների տիրույթում ($10^6$—$10^7$ *հց*): Որոշ բյուրեղներում մեկից մեծ սպին ունեցող միջուկների էլեկտրական քվադրուպոլ մոմենտի փոխազդեցությունը անհամասեռ բյուրեղային դաշտի հետ առաջացնում է մակարդակների լրացուցիչ ճեղքում: Այդ ենթամակարդակների միջև անցումներով պայմանավորված՝ էլեկտրամագնիսական ալիքի էներգիայի կլանումը կոչվում է միջուկային քվադրուպոլ ռեզոնանս (ՄՔՌ): Էլեկտրոնային Մ. ռ. ֆեռոմագնիսներում և հակաֆեռոմագնիսներում համապատասխանաբար կոչվում է *ֆեռոմագնիսական ռեզոնանս* (ՖՄՌ) և *հակաֆեռոմագնիսական ռեզոնանս* (ՀՖՄՌ): Մ. ռ-ի տարատեսակ է նաև ցիկլոտրոնային ռեզոնանսի (ՑՌ) երևույթը, որը դիտվում է հաստատուն մագնիսական դաշտում տեղադրված մետաղներում և կիսահաղորդիչներում: ՑՌ-ը էլեկտրամագնիսական էներգիայի ռեզոնանսային կլանումն է՝ կապված $H_0$-ին ուղղահայաց հարթության մեջ հաղորդականության էլեկտրոնների և խոռոչների պարբերական շարժման հետ: Ներկայումս ուսումնասիրվում է նաև կրկնակի էլեկտրոնային միջուկային ռեզոնանսի (ԿԷՄՌ) երևույթը:

*Գրկ.* Сликтер Ч., Основы теории магнитного резонанса, пер. с англ., М., 1967.

*Ս. Մնացականյան*

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՎԱՐԻԱՑԻԱՆԵՐ**, Երկրի *մագնիսական դաշտի* անընդհատ փոփոխությունները ժամանակի ընթացքում: Մ. վ. բնութագրվում են Երկրի մագնիսական դաշտի բաղադրիչների (հորիզոնական H, ուղղաձիգ Z և մագնիսական խոնարհում D) շեղումով միջին արժեքից՝ դիտարկման տեղում: Մերձհասարակածային մարզերում Երկրի մագնիսական դաշտի լրիվ լարվածության միջին արժեքը կազմում է 0,42 *է*, դեպի բևեռներ այն մեծանում է և հասնում 0,70 *է*-ի: H, Z և D վարիացիաները չափող սարքերը կոչվում են մագնիսական վարիոմետրեր: Մ. վ-ի մեծությունը և ձևը կախված են դիտարկման տեղի լայնությունից, տարվա եղանակից և Արեգակի ակտիվությունից: Մ. վ-ի ուսումնասիրությունը նպաստում է Երկրի մագնիսականության և Երկրի ու Արեգակի ֆիզիկական կապերի բնույթի բացահայտմանը:

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՈՒԺԵՂԱՑՈՒՑԻՉ**, էլեկտրական ազդանշանների հզորության *ուժեղացուցիչ*, որի գործողության հիմքում ընկած է *մագնիսական թափանցելիության* և *մագնիսական դաշտի* լարվածության՝ ֆեռոմագնիսական նյութերին հատուկ ոչ գծային կախման օգտագործումը: Ուժեղացումը հնարավոր է դառնում ֆեռոմագնիսական միջուկ պարունակող կոճի դիմադրության կառավարումով: Կոճին հաջորդաբար միացնելով U սնման աղբյուր և R բեռ (նկ.) ու կիրառելով մագնիսացնող (կառավարող) լրացուցիչ փաթույթ, կարելի է կառավարող հոսանքի փոքր փոփոխությամբ առաջ բերել հիմնական կոճի դիմադրության մեծ փոփոխություն, այսինքն՝ բեռում արտադրվող հզորության զգալի ուժեղացում: Քանի որ հաստատուն $I_0$ հոսանքով կառավարվող կոճը փոփոխական հոսանքի համար ոչ սիմետրիկ դիմադրություն է, ապա բեռի հոսանքը կպարունակի զույգ հարմոնիկներ: Դրանք վերացնելու համար հիմնական փաթույթը պատրաստում են զուգահեռ կամ հաջորդաբար միացված երկու միանման W փաթույթներից, իսկ կառավարող $W_0$ փաթույթները միացնում այնպես, որ երբ մի փաթույթի միջուկում փաթույթների մագնիսաշարժ ուժերը գումարվում են, ապա մյուսում դրանք ուղղված են լինում հակառակ: Այդպիսի միացումը միաժամանակ համակշռում է կառավարող շղթայում հիմնական կոճից մակածվող փոփոխական հոսանքները՝ ավելորդ դարձնելով հատուկ դրոսելի օգտագործումը: Կառավարումը կարելի է իրագործել նաև հիմնական շղթայի հոսանքի հաճախականությունից զգալիորեն ավելի ցածր հաճախականության հոսանքով, այսինքն՝ մոդուլելով բեռով անցնող բարձր հաճախականության հոսանքը: Մ. ու-ի կատարելագործված տարբերակներից է կամրջակայինը, որն ապահովում է ավելի մեծ զգայնություն, ուստի և ուժեղացում: Ուժեղացման գործակցով չզիջելով էլեկտրոնային ուժեղացուցիչին՝ Մ. ու. գերազանցում է վերջինիս հուսալիությամբ, ծառայության ժամկետով, գերբեռնվածությունների նկատմամբ իր դիմացկունությամբ: Մ. ու-ների հիմնական թերությունը իներցիոն հատկությունն է, որը սահմանափակում է նրանց կիրառումը 10 *կհց*-ից ոչ բարձր հաճախականությունների տիրույթով: Մ. ու. լայնորեն օգտագործվում է հզոր ագրեգատների ավտոմատ կառավարման համակարգերում, ճշգրիտ չափման սարքերում:




Մագնիսական ուժեղացուցիչի պարզագույն սխեման

*Ռ. Ղազարյան*

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՓՈԹՈՐԻԿՆԵՐ**, *Երկրի մագնիսականության* տարրերի սահուն ընթացքը կտրուկ խախտող Երկրի *մագնիսական դաշտի* ուժեղ խոտորումներ: Մ. փ. տևում են մի քանի *ժ*-ից մինչև մի քանի օր և դիտվում են ամբողջ Երկրի վրա միաժամանակ: Որպես կանոն Մ. փ. բաղկացած են նախնական, սկզբնական, գլխավոր և վերականգնման փուլերից: Նախնական փուլում դիտվում են Երկրի մագնիսական դաշտի աննշան փոփոխություններ (հիմնականում բարձր լայնություններում), ինչպես նաև բնորոշ, դաշտի փոքր պարբերությամբ տատանումների գրգռումներ: Սկզբնական փուլը բնութագրվում է դաշտի առանձին բաղադրիչների հանկարծակի փոփոխմամբ ամբողջ Երկրի վրա, իսկ գլխավորը՝ դաշտի մեծ տատանումներով և հորիզոնական բաղադրիչի խիստ նվազմամբ: Մ. փ-ի վերականգնման փուլում դաշտը վերադառնում է իր նորմալ արժեքին:

Մ. փ. առաջանում են Արեգակի ակտիվ տիրույթներից դուրս եկող պլազմայի հոսքերով, որոնք համադրվում են արևապսակի (տես *Արեգակ*) պլազմայի հաստատուն, շառավղային արտահոսքին՝ արեգակնային քամուն: Այդ պատճառով Մ. փ. համարյա համընկնում են արեգակնային ակտիվության 11-ամյա պարբերության մաքսիմումների հետ:

Մ. փ. երկրաֆիզիկական ավելի ընդհանուր երևույթի՝ մագնիսոլորտային փոթորկի հիմնական դրսևորումներից են: Մագնիսոլորտային փոթորիկը ուղեկցվում է Երկրի վերին մթնոլորտում բևեռափայլի, իոնոլորտի գրգռումների, ռենտգենյան և ցածրհաճախականության ճառագայթումների առաջացումով: Մ. փ-ի ժամանակ էապես փոփոխվում են ռադիոալիքներն անդրադարձնող և կլանող իոնոլորտի շերտերի պարամետրերը (տեղաբաշխման բարձրություն, էլեկտրոնների խտություն ևն), որի հետևանքով առաջանում են կարճալիք ռադիոկապի զգալի խանգարումներ: Մագնիսական խոտորումների ժամանակ տեղի է ունենում նաև վերին մթնոլորտի տաքացում և ջերմության փոխանցում ներքնոլորտին: Այս երևույթը նպաստում է ներքնոլորտում շրջապտտական շարժումների զարգացմանն ու ցիկլոնների առաջացմանը:

**ՄԱԳՆԻՍԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, մագնիսական փոխազդեցությամբ պայմանավորված երևույթների համախումբ: Այդ փոխազդեցությունը մակրոսկոպիկ մասշտաբներով դրսևորվում է *էլեկտրական հոսանքների*, հոսանքի և մագնիսի, ինչպես նաև մագնիսների միջև: Ավելի ընդհանուր ձևով Մ. կարելի է սահմանել իբրև լիցքավորված շարժվող մասնիկների փոխազդեցության հատուկ տեսակ, որն իրագործվում է *մագնիսական դաշտի* միջոցով: Մագնիսական դաշտը էլեկտրական դաշտի հետ միասին մատերիայի էլեկտրամագնիսական տեսակի հիմնական բնութագիրն է, սակայն դրանք լրիվ սիմետրիկ չեն: Եթե էլեկտրական դաշտի սկզբնաղբյուրը էլեկտրական լիցքերն են, ապա մագնիսական դաշտ ստեղծող *մագնիսական լիցքեր* առայժմ բնության մեջ չեն հայտնաբերվել: Մագնիսական դաշտի աղբյուրը շարժվող էլեկտրական լիցքերն են՝ էլեկտրական հոսանքը: Ատոմական մասշտաբներում գոյություն ունեն տարրական մասնիկների մագնիսական հատկությունները պայմանավորող երկու տեսակ միկրոհոսանքներ. ուղեծրային, որը կապված է մասնիկների ծանրության կենտրոնի համընթաց շարժման հետ (մասնավորապես՝ միջուկի շուրջը էլեկտրոնի շարժման հետ), և սպինային, որը որոշվում է մասնիկների ներքին կառուցվածքով: Մ-յան քանակական բնութագիրը *մագնիսական մոմենտն* է: Մակրոսկոպիկ նմուշի մագնիսական վիճակի բնութագրման համար ընտրվում է միավոր ծավալի գումարային մագնիսական մոմենտը, որը կոչվում է մագնիսացում (I): Փորձը ցույց է տալիս, որ մագնիսացումը համեմատական է ար-

տաքին մագնիսական դաշտի $\vec{H}$ լարվածությանը՝ $\vec{I}=\varkappa\vec{H}$ ($\varkappa$-ն մագնիսական ընկալունակությունն է): Նյութերն ըստ մագնիսական հատկությունների կարելի է բաժանել դիամագնիսների, պարամագնիսների և մագնիսակարգավորված նյութերի: Դ ի ա մ ա գ ն ի ս ն ե ր են կոչվում այն նյութերը, որոնց $\varkappa<0$ և, որպես կանոն, բացարձակ արժեքով չի անցնում $10^{-6}$-ից: Այդ նյութերի տիպիկ ներկայացուցիչներն են իներտ գազերը, օրգ. միացությունների շատերը և որոշ մետաղներ: Տես նաև *Դիամագնիսականություն*: Պ ա ր ա մ ա գ ն ի ս ն ե ր ի ն են պատկանում այն նյութերը, որոնց մագնիսական ընկալունակությունը դրական է և ունի $10^{-3}$—$10^{-6}$ կարգի մեծություն: Պարամագնիսներ են $O_2$ և NO գազերը, հազվագյուտ հողային տարրերի աղերը, անցումային մետաղների գոլորշիները են: Տես նաև *Պարամագնիսականություն*:

Մ ա գ ն ի ս ա կ ա ր գ ա վ ո ր վ ա ծ ն յ ու թ ե ր ու մ էլեկտրաստատիկ բնույթի ներքին փոխազդեցությունների հետևանքով, առանց արտաքին դաշտի կիրառության, առանձին մասնիկների մագնիսական մոմենտները դասավորվում են խիստ կարգով: Մագնիսակարգավորված նյութեր են՝ 1. Ֆ ե ռ ո մ ա գ ն ի ս ն ե ր ը, որոնցում փոխանակային փոխազդեցությունը բոլոր մասնիկների մագնիսական մոմենտները կողմնորոշում է միմյանց զուգահեռ: Նրանց մագնիսական ընկալունակությունն ունի շատ մեծ արժեքներ: Ֆեռոմագնիսներին են պատկանում Fe-ը, Co-ը, Ni-ը, հազվագյուտ հողային տարրերի մի մասը, բազմաթիվ համաձուլվածքներ և միացություններ: Այդ նյութերի հիմնական առանձնահատկությունը ցածր ջերմաստիճանում սպոնտան (ինքնաբերաբար) մագնիսացումն է, որն անհետանում է այդ նյութերից յուրաքանչյուրի համար բնորոշ ջերմաստիճանում՝ *Կյուրիի կետում*: Տես նաև *Ֆեռոմագնիսականություն*: 2. Հ ա կ ա ֆ ե ռ ո մ ա գ ն ի ս ն ե ր ը, որոնցում փոխանակային փոխազդեցությունը հարևան ատոմների մագնիսական մոմենտները դասավորում է իրար հակազուգահեռ: Հակաֆեռոմագնիսների մագնիսական կառուցվածքը կարելի է ներկայացնել իրար մեջ հագցված երկու և ավելի ֆեռոմագնիսական ենթավանդակների տեսքով, այնպես, որ նրանց մագնիսական մոմենտները փոխադարձաբար կոմպենսացվում են: Այդպիսի նյութերը չունեն սպոնտան մոմենտ, իսկ նրանց ընկալունակությունը էապես կախված է չափման ուղղությունից: Այսպես կոչված, Նեելի ջերմաստիճանից բարձր ջերմաստիճանում հակաֆեռոմագնիսներում կարգավորված կառուցվածքը խախտվում է, և նրանք դրսևորում են իրենց որպես պարամագնիսներ: Հակաֆեռոմագնիսներ են Mn-ի, Cr-ի բյուրեղները, հազվագյուտ հողային տարրերի մի մասը և անցումային տարրերի բազմաթիվ միացություններ: Տես նաև *Հակաֆեռոմագնիսականություն*: 3. Ֆ ե ռ ի մ ա գ ն ի ս ն ե ր ը կամ չկոմպենսացված հակաֆեռոմագնիսները, որոնց մագնիսական կառուցվածքը, ինչպես հակաֆեռոմագնիսներինը, կարելի է ներկայացնել իրար մեջ հագցված ֆեռոմագնիսական ենթավանդակների տեսքով: Բայց սրանցում մագնիսական մոմենտները լրիվ կոմպենսացված չեն: Ֆեռիմագնիսներն ունեն սպոնտան մոմենտ և հիմնականում դրսևորում են իրենց ինչպես ֆեռոմագնիսական մետաղներ, միայն այն տարբերությամբ, որ գործնականում նրանք բոլորն էլ կիսահաղորդիչներ կամ դիէլեկտրիկներ են: Ֆեռիմագնիսներ են շպինելի, նռնաքարի կառուցվածքով ֆերիտները, օրթոֆերիտները են: Մագնիսակարգավորված նյութերին են պատկանում նաև թույլ ֆեռոմագնիսները, որոնցում ենթավանդակների մագնիսական մոմենտների ոչ լրիվ կոմպենսացումը պայմանավորված է հարևան ատոմների մագնիսական մոմենտների ուղղությունների հակազուգահեռության փոքր խախտումներով: Այդ տեսակի նյութեր են հեմատիտը՝ $\alpha$—$Fe_2O_3$, օրթոֆերիտները, մի շարք մետաղների կարբոնատներ են:

Մ. լայն կիրառություն է գտել ժամանակակից գիտության և տեխնիկայի բազմազան բնագավառներում: Մեր օրերում նյութի մագնիսական հատկությունների ուսումնասիրման հիման վրա հաջողվել է ստեղծել նոր տեսակի մագնիսական նյութեր, որոնք օգտագործվում են էլեկտրատեխնիկայում, ռադիոտեխնիկայում և ավտոմատիկայում: Նյութի մագնիսական հատկությունների ուսումնասիրման համար մշակված հզոր մեթոդները հնարավորություն են տվել ստանալու որակապես նոր տեղեկություններ ատոմական մակարդակով տեղի ունեցող փոխազդեցությունների մասին: Էլեկտրոնային պարամագնիսական ռեզոնանսի, միջուկային մագնիսական ռեզոնանսի մեթոդները, Մյոսբաուերի էֆեկտը լայն կիրառություն ունեն պինդ մարմնի ֆիզիկայում, քիմիայում, կենսաբանության և բժշկության մեջ:

*Գրկ.* М а т т и с Д., Теория магнетизма. Введение в изучение кооперативных явлений, пер. с англ., М., 1967; В о н с о в с к и й С. В., Магнетизм, М., 1971.

*Ս. Մնացականյան*

**ՄԱԳՆԻՍԱԿԱՌՈՒՑՎԱԾՔԱՅԻՆ ՎԵՐԼՈՒԾՈՒԹՅՈՒՆ**, մետաղից կամ մետաղական համաձուլվածքից պատրաստված կիսաֆաբրիկատների և շինվածքների կառուցվածքի հետազոտման ու հսկման եղանակների համախումբ: Հիմնված է ֆեռոմագնիսական նյութի մագնիսական բնութագրերի և կառուցվածքի միջև եղած կապի օգտագործման վրա: Գլխավորապես կիրառվում է ջերմամշակումից հետո պողպատի և թուջի մեխանիկական հատկությունները ու կառուցվածքը որոշելու համար: Լայն գործածություն ունեն ի ն դ ու կ ց ի ո ն դ ի ֆ ե ր ե ն ց ի ա լ ս խ ե մ ա յ ո վ աշխատող սարքերը, որոնց օգնությամբ փորձարկվող պողպատե դետալի մագնիսական հատկությունները համեմատվում են իբրև էտալոն ընդունված նորմալ կառուցվածքով դետալի մագնիսական հատկությունների հետ: Այդ սարքերի անսխալ աշխատանքի անհրաժեշտ պայմանը փորձարկվող նմուշների ձևի ու չափերի անփոփոխ լինելն է, մի բան, որ պարտադիր չէ *կոերցիտիվ ուժի* համեմատական չափման սկզբունքով աշխատող սարքերի համար: Մետաղի տեքստուրայի հետազոտությունը հիմնված է մագնիսական հատկությունների *անիզոտրոպության* և տեքստուրայի կապի վրա: Մագնիսական անիզոտրոպությունը կարող է չափվել սովորական բալիստիկ մեթոդով կամ, այսպես կոչված, մ ա գ ն ի ս ա կ ա ն ու ժ ա չ ա փ ի մ ե թ ո դ ո վ, որը հիմնականում կիրառվում է գլոցվածքի տեքստուրայի հետազոտման համար: Կարծր համաձուլվածքներում տեղի ունեցող ֆազային փոխակերպումների հետ կապված պրոցեսներն ուսումնասիրելիս օգտվում են նմուշի հ ա գ ե ց մ ա ն մ ա գ ն ի ս ա ց վ ա ծ ու թ յ ա ն չ ա փ մ ա ն մ ե թ ո դ ի ց: Եթե նախապես հայտնի է յուրաքանչյուր ֆազի հագեցման մագնիսացվածությունը, կարելի է որոշել նաև ֆազերի քանակական հարաբերակցությունը: Մ. վ. կիրառվում է նաև գունավոր մետաղների համաձուլվածքներում ֆեռոմագնիսական մասնիկների առկայության ստուգման, ապարներում ֆեռոմագնիսական բաղադրիչների հայտնաբերման, պարա- և դիամագնիսական միացությունների քիմ. բաղադրության հետազոտման համար (տես *Մագնիսաքիմիա*):

**ՄԱԳՆԻՍԱՀԵՏԱԽՈՒԶՈՒԹՅՈՒՆ**, հետախուզության երկրաֆիզիկական մեթոդ. հիմնված է ապարների մագնիսական հատկությունների տարբերության վրա: Կիրառվում է երկրաբանական հետազոտությունների բոլոր փուլերում և ընդգրկում է՝ Երկրի մագնիսական դաշտի կամ նրա տարրերի լարվածության չափումները, մագնիսական քարտեզների կազմումը, չափումների արդյունքների երկրաբանական մեկնաբանումը ըստ ապարների մագնիսական բնութագրումների: Մ. ուսումնասիրում է երկրբ. մարմինների ստեղծած մագնիսական անոմալիաները, որոնք մագնիսացված են Երկրի ժամանակակից և հին մագնիսական դաշտերով: Ապարների մագնիսացումը որոշվում է նրանց մեջ ֆեռոմագնիսական միներալների (մագնետիտ, պիրրոտին) առկայությամբ: Առանձնապես ինտենսիվ մագնիսական անոմալիաներ են ստեղծում հիմքային և գերհիմքային հրային ապարները, մագնետիտային երկաթային հանքաքարերը: Մ-յան դեպքում չափումները կատարվում են Երկրի մակերևույթին, ինքնաթիռներից կամ ուղղաթիռներից (աերոմագնիսական հանույթ), շարժվող նավերից (հիդրոմագնիսական հանույթ կամ ծովային Մ.), հանքափորվածքներում (ստորգետնյա Մ.), հորատանցքերում (հորատանցքային Մ.): Չափումների համար օգտագործվում են տարբեր տիպի *մագնիսաչափեր*: Երկրի մակերևույթին հանույթը, որպես կանոն, կատարվում է ուղղագիծ պրոֆիլներով, ընդ որում պրոֆիլների և դիտման կետերի միջև եղած հեռավորությունների հարաբերությունը կազմում է 10:1-ից մինչև 1:1: Աերոմագնիսական և հիդրոմագնիսական հանույթի ընթացքում չափումները կատարվում են անընդհատ կամ դիսկրետ ուղղագիծ, իսկ երբեմն՝ կորագիծ (լեռնային վայրերում), պրոֆիլների ցանցի երկարությամբ շարժվելիս: Մ. ինքնուրույն,

ինչպես նաև երկրաֆիզիկական և երկրաքանական մեթոդների հետ, կիրառվում է երկրակեղևի ռեգիոնալ խորքային կառուցվածքի ուսումնասիրման, այդ թվում՝ պլատֆորմների հիմքի տեղադրման խորության որոշման (նավթ և գազ որոնելու դեպքում), երկաթի հանքաքարի մագնիսական տարատեսակների, ինչպես նաև հիմքային և գերհիմքային ապարների հետ կապված մետաղային ու ոչ մետաղային հանքավայրերի, աքցեսոր մագնիսական միներալներ պարունակող գունավոր, հազվագյուտ, ազնիվ մետաղների որոնման և երկրբ. քարտեզագրման համար: Երկաթի հանքաքարի հետախուզության դեպքում Մ. հանքափորվածքներում և հորատանցքերում ապարների մագնիսական ընկալունակության չափումների զուգակցմամբ հնարավորություն է ընձեռում ճշտել երկաթահանքային մարմինների դիրքը և գնահատել մագնիսական երկաթի տոկոսային պարունակությունը հանքաքարում:

**ՄԱԳՆԻՍԱՀԻԴՐՈԴԻՆԱՄԻԿԱԿԱՆ ԳԵՆԵՐԱՏՈՐ**, ՄՀԴ գեներատոր, էներգետիկական տեղակայանք էլեկտրահաղորդիչ միջավայրի ջերմային էներգիան էլեկտրականի փոխակերպելու համար: Բաղկացած է կանալից, որով շարժվում է աշխատող մարմինը (*էլեկտրոլիտներ*, *հեղուկ մետաղներ*, *պլազմա*), էլեկտրամագնիսական համակարգից և էլեկտրաէներգիայի արտանցման հարմարանքներից: Մ. գ-ի գործողության սկզբունքը հետևյալն է. մագնիսական դաշտի լայնքով շարժվող աշխատող մարմնում մակածվում է էլեկտրական հոսանք, որը էլեկտրական շղթային է փոխանցվում համապատասխան էլեկտրոդների միջոցով:




Մագնիսահիդրոդինամիկական գեներատորով տեղակայանքի պարզագույն սխեման. *1*. էլեկտրամագնիսի փաթույթ, *2*. այրման խուց, *3*. հավելանյութ, *4*. օդ, *5*. վառելիք, *6*. ծայրափողակ, *7*. հաջորդաբար միացված բեռնվածքով էլեկտրոդներ, *8*. այրման արգասիքների ելք

Մ. գ-ները լինում են կոնդուկցիոն (էլեկտրական հոսանքն անմիջականորեն արտանցվում է աշխատող մարմնի հոսքի ուղղությամբ տեղադրված էլեկտրոդներից) և ինդուկցիոն (առանց էլեկտրոդների): Ըստ նշանակման Մ. գ-ները լինում են իմպուլսային (մի քանի *մկվրկ* տևողությամբ), կարճատև գործողության և երկարատև աշխատող: Մ. գ-ները կարող են կիրառվել էլեկտրակայաններում (բազային բեռնվածքով և երկրորդային շոգետուրբինային ցիկլի օգտագործմամբ), գագաթնակետային բեռնվածքների կոմպենսացման տեղակայանքներում, կարճատև էներգետիկական հզորությունների ստեղծման տեղակայանքներում, ստորջրյա նավատորմում (որպես էներգիայի աղբյուր), տիեզերական թռչող ապարատներում:

**ՄԱԳՆԻՍԱՄԵԽԱՆԻԿԱԿԱՆ ԵՐԵՎՈՒՅԹՆԵՐ**, գիրոմագնիսական երևույթներ, երևույթներ, որոնցում դրսևորվում է միկրոմասնիկների (ատոմներ, մոլեկուլներ) մագնիսական և մեխանիկական մոմենտների կապը: Մ. ե-ի դիտման զանազան փորձեր բերվում են հետևյալ երկու տարբերակներին՝ ա. նմուշի մագնիսացում՝ պտտման ժամանակ, բ. նմուշի պտույտ՝ մագնիսացման դեպքում (մագնիսացումն իրագործվում է արտաքին մագնիսական դաշտի միջոցով): Պտտման ժամանակ նմուշի մագնիսացում առաջինը դիտել է ամերիկացի գիտնական Ս. Բարնետը (S. Barnett, 1873—1956) 1909-ին: Երկրորդ տարբերակը՝ Էյնշտեյնի-դը Հաազի էֆեկտ, 1915-ին հաջողությամբ իրականացրել են Ա. Էյնշտեյնը և Վ. դը Հաազը (W. de Haas, 1878—1960): Այդ փորձերում չափելով ֆեռոմագնիսական նյութերի ատոմների մագնիսական և մեխանիկական մոմենտների հարաբերությունը (մագնիսամեխանիկական հարաբերություն)՝ $\gamma = g\frac{e}{2mc}$ (e-ն էլեկտրոնի լիցքն է, m-ը՝ զանգվածը, c-ն՝ լույսի արագությունը, իսկ g-ն տվյալ նյութի համար հաստատուն մեծություն է և կոչվում է g-ֆակտոր), գնահատվել է g-ֆակտորի թվային արժեքը, որն ստացվել է մոտավորապես 2: Ներկայումս g-ի որոշման համար կիրառվում են ավելի ճշգրիտ՝ ռեզոնանսային մեթոդներ:

*Գրկ.* Вонсовский С. В., Шур Я. С., Ферромагнетизм, М.—Л., 1948; Вонсовский С. В., Магнетизм, М., 1971.

*Ս. Մնացականյան*

**ՄԱԳՆԻՍԱՄԵՏՐ**, մագնիսական դաշտի բնութագիրը և նյութի մագնիսական հատկությունները, նեղ իմաստով՝ մագնիսական դաշտի լարվածությունը, ուղղությունը և գրադիենտը չափող սարք: Ըստ նշանակման լինում են մագնիսական դաշտի լարվածությունը (էրստեդմետր), ուղղությունը (ինկլինատոր և դեկլինատոր), գրադիենտը (գրադիենտամետր), մագնիսական ինդուկցիան (տեսլամետր), հոսքը (վեբերմետր կամ ֆլյուկսմետր), թափանցելիությունը (մյու-մետր), ընկալունակությունը (կապա-մետր) և մագնիսական մոմենտը չափող Մ-եր: Տարբերում են նաև դաշտի բնութագրերի բացարձակ մեծությունները և տարածության մեջ կամ ժամանակից կախված դաշտի հարաբերական փոփոխությունները չափող Մ-եր: Վերջինները կոչվում են մագնիսական վարիոմետրեր: Ըստ գործողության սկզբունքի ստորաբաժանվում են մագնիսաստատիկական, մագնիսադինամիկական, էլեկտրամագնիսական, ինդուկցիոն, քվանտային, գերհաղորդչային քվանտային Մ-եր: Բոլոր Մ-երը օգտագործվում են հիմնականում Երկրի, մագնիսական դաշտի լարվածությունը և նրա բաղադրիչները, գրադիենտը և նյութերի մագնիսական հատկությունները չափելու համար, ինդուկցիոն, քվանտային և գերհաղորդչային քվանտային Մ-երը՝ նաև կենսաֆիզիկայում, միկրոկենսաբանության մեջ, *մագնիսաքիմիայում*, երկրբ. հետախուզություններում, թույլ դաշտերը չափելու համար և այլ նպատակներով:

**ՄԱԳՆԻՍԱՅԻՆ ԶՈՆԴ ԵՎ ՕՂԱԿ**, խոշոր եղջերավոր կենդանիների նախաստամոքսների վնասվածքների (տրավմատիզմ) կանխարգելման ու բուժման համար գործածվող սարքերի համալիր: Ստեղծել է Ս. *Մելիքսեթյանը*: Բաղկացած է մետաղաինդիկատորից, մագնիսային զոնդից և



Մետաղաինդիկատոր

մագնիս-կոբալտային օղակից: Մետաղաինդիկատորը կազմված է հաղորդիչից, ուժեղարար բլոկից և ինդիկատորից: Օգտագործվում է օրգանիզմում մետաղյա օտար մարմինները հայտնաբերելու համար: Մագնիսային զոնդը բաղկացած է մագնիսական ծայրակալից, ռետինե թեզանիքով շղթայից, պաշտպանիչ ռետինե խողովակով կապրոնե քուղից, առաձգական զոնդատարից և



Մագնիսային զոնդ և օղակ

կողմնացույցից: Զոնդի օգնությամբ նախաստամոքսներից հեռացնում են մետաղյա օտար մարմինները, զոնդարկումից 10—12 ժամ առաջ դադարեցնում են կերակրումը, առատորեն ջուր տալիս և կանգնած դիրքով կենդանուն ֆիքսում: Ծայրակալից անջատված և օծված (ձեթով, վազելինով) զոնդը քթանցքով անց են կացնում կերակրափող: Դնում երախակալ ու զոնդատարի օգնությամբ բերանի խոռոչից



Մագնիսային օղակ

դուրս հանում դրա ծայրը, ապա ամրացնում մագնիսական ծայրակալը ու նորից մտցնում կերակրափող: Կլման ակտի և կերակրափողի կծկումների շնորհիվ զոնդին ամրացված մագնիսական ծայրակալը հասնում է կտրիչի նախադուռն ու ապա՝ ցանցը (տեղադրությունը որոշում են կողմնացույցով) 40—60 *ր* (բուժման ժամա-

նակ 24 *ժ*) հետո կերակրափողից զոնդը դուրս են հանում:

Մագնիսային օղակը, ֆեռոկոբալտային համաձուլվածք է: Օգտագործվում է կանխարգելիչ նպատակներով: Նախաստամոքս մտցնում են բերան-ըմպանային ճանապարհով: Օղակը մշտապես գտնվելով նախաստամոքսում՝ հավաքում և վնասազերծում է օրգանիզմ թափանցած մետաղյա օտար մարմինները:

*Ս. Մելիքսեթյան*

**ՄԱԳՆԻՍԱՅԻՆ ՀՐԱՔԱՐ**, տես *Պիրրոտին*:

**ՄԱԳՆԻՍԱՇԱՐԺ ՈՒԺ**, մագնիսացնող ուժ, էլեկտրական հոսանքի մագնիսացնող ազդեցությունը բնութագրող մեծություն: Կիրառվում է *մագնիսական շղթաները* հաշվարկելիս, էլեկտրական շղթաների դեպքում գործածվող *էլեկտրաշարժ ուժի* նման: Հավասար է որևէ AB կոնտուրով մագնիսական դաշտի $\vec{H}$ լարվածության վեկտորի գծային ինտեգրալին՝ $F_{AB}=\int_A^B \vec{H}d\vec{l}$ ($d\vec{l}$-ը ինտեգրման կոնտուրի տարրն է): Փակ կոնտուրով Մ. ու. հավասար է այդ կոնտուրով շրջափակվող լրիվ հոսանքին (լրիվ հոսանքի օրենք). $\oint \vec{H}d\vec{l}=wi$ (w-ն գալարների թիվն է, i-ն՝ հոսանքի ուժը): Հաջորդական մագնիսական շղթայում տվյալ մագնիսական հոսքն առաջացնող Մ. ու. հավասար է առանձին տեղամասերի Մ. ու-երի գումարին: Երբեմն $U_{AB}=\int_A^B H_l dl$ մեծությունը, որտեղ $H_l$-ը մագնիսական դաշտի լարվածության վեկտորի պրոյեկցիան է l ուղղությամբ, անվանում են մագնիսական լարում: Վերջինս, ի տարբերություն էլեկտրական լարման, կախված է AB կոնտուրի ձևից, իսկ փակ կոնտուրի դեպքում կարող է հավասար չլինել զրոյի: Միավորների միջազգային համակարգում Մ. ու-ի միավորը *ամպեր-գալարն* է (կամ ամպերը), CGS-ում՝ գիլբերտը: 1*ա-գ*$=\frac{4\pi}{10}$ *գբ*≈ ≈1,2566 *գբ*:

*Ռ. Ղազարյան*

**ՄԱԳՆԻՍԱՋԵՐՄԱՅԻՆ ԵՐԵՎՈՒՅԹՆԵՐ**, մարմնի ջերմային վիճակի փոփոխությունները՝ կախված մագնիսական վիճակի փոփոխությունից: Մ. ե-ի առաջացումը բացատրվում է մագնիսացման կամ ապամագնիսացման ժամանակ մարմնի ներքին էներգիայի փոփոխմամբ: Եթե մագնիսական վիճակի փոփոխությունը տեղի է ունենում ադիաբատ պայմաններում, ապա Մ. ե. դրսևորվում են մարմնի ջերմաստիճանի փոփոխությամբ (մագնիսակալորիական էֆեկտ), իսկ եթե տեղի է ունենում իզոթերմ ձևով, ապա նկատվում է ջերմության անջատման կամ կլանման երևույթ: Մ. ե. առավել զգալի են ֆեռո-, հակաֆեռո- և ֆեռիմագնիսական նյութերում: Ֆեռիմագնիսական նյութերին բնորոշ Մ. ե. լավ են ուսումնասիրված այն դեպքում, երբ մագնիսական վիճակը փոփոխվում է մագնիսացման վեկտորի բացարձակ արժեքի փոփոխման պատճառով (պարապրոցես) և թույլ են ուսումնասիրված դոմենային սահմանների տեղաշարժմամբ կամ մագնիսացման վեկտորի պտույտով (տեխնիկական մագնիսացում) պայմանավորված փոփոխությունների դեպքում: Հատկապես լավ են հետազոտված պարամագնիսական որոշ աղերում դիտվող Մ. ե.: Պարզվել է, որ եթե ցածր ջերմաստիճանում գտնվող այդ աղերը ադիաբատ պայմաններում ապամագնիսացվեն ուժեղ մագնիսական դաշտերով, ապա կնկատվի այդ աղերի ջերմաստիճանի հետագա նվազում: Նշված եղանակով հնարավոր է ստանալ բացարձակ զրոյին բավական մոտ ջերմաստիճաններ (մագնիսական սառեցում):

*Մ. Չալաբյան*

**ՄԱԳՆԻՍԱՍՏՐԻԿՑԻԱ** (< *մագնիս* և լատ. strictio — սեղմում, ձգում), մարմնի ձևի և չափերի փոփոխությունը մագնիսացման ժամանակ: Երևույթը հայտնաբերել է Ջ. *Ջոուլը* 1842-ին: Բազմաբյուրեղային նմուշի Մ. քանակապես բնութագրվում է մագնիսական դաշտի ուղղությամբ (երկայնական Մ.) և դաշտին ուղղահայաց ուղղությամբ (լայնական Մ.) նմուշի Δl/l հարաբերական երկարացմամբ: Մ. զգալի է միայն ֆեռո- և ֆեռիմագնիսական նյութերի համար: Մ-ին հակառակ երևույթը (ֆեռոմագնիսական մարմնի մագնիսացվածության փոփոխությունը դեֆորմացման ժամանակ) կոչվում է մագնիսաառաձգական էֆեկտ կամ Վիլարիի էֆեկտ: Մ-ի վրա է հիմնված *մագնիսաստրիկցիոն փոխակերպիչների* և մագնիսաառաձգական փոխակերպիչների աշխատանքը:

**ՄԱԳՆԻՍԱՍՏՐԻԿՑԻՈՆ ՓՈԽԱԿԵՐՊԻՉ**, էլեկտրամեխանիկական կամ էլեկտրաձայնական փոխակերպիչ, որում մագնիսական դաշտի էներգիան, դարձելի *մագնիսաստրիկցիայի* շնորհիվ, փոխակերպվում է մեխանիկական տատանումների էներգիայի և հակառակը: Կիրառվում է իբրև *ուլտրաձայնի* ճառագայթիչ և ընդունիչ, տարբեր կոնստրուկցիաների ու կառույցների թրթռումները չափելիս, ինչպես նաև էլեկտրա- և ռադիոտեխնիկական սարքերի զտիչներում ու կայունարարներում:

**ՄԱԳՆԻՍԱ-ՏԵԼՈՒՐԱԿԱՆ ԶՈՆԴԱՎՈՐՈՒՄ** (<*մագնիս* և լատ. tellus, սեռական հոլովում՝ telluris — Երկիր), ՄՏԶ, Երկրի ներքին կառուցվածքը հետազոտելու մեթոդ. հիմնված է արտերկրային ծագման փոփոխական էլեկտրամագնիսական դաշտի ուսումնասիրության վրա: Առաջարկել են (1950—53) սովետական գիտնական Ա. Ն. Տիխոնովը և ֆրանսիացի գիտնական Լ. Կանյարը: Երկրի մակերևույթին որոշակի կետում փոխուղղահայաց կերպով տեղադրում են երկու մագնիսաչափ և երկու էլեկտրաչափիչ հողակցված գծեր՝ յուրաքանչյուրը 500 *մ* երկարությամբ: Այդ սարքերի օգնությամբ դիտարկվում են էլեկտրամագնիսական տատանումները, որոնց պարբերությունը կազմում է *վրկ*-ի մասերից մինչև *օր*, և էլեկտրական ու մագնիսական տատանումների ամպլիտուդների հարաբերությամբ որոշում ապարների թվացող (միջին) դիմադրությունը ուսումնասիրվող շրջանում: ՄՏԶ-ի օգնությամբ կազմում են հիմքի կամ բարձր դիմադրությամբ այլ հորիզոնի ստորգետնյա (խորությունը՝ մինչև 5 *կմ*) ռելիեֆի քարտեզներ, հետազոտում ապարների էլեկտրահաղորդականության տեղաբաշխման օրինաչափությունները մինչև 400—500 *կմ* խորությունը: ՄՏԶ-ն և նրա պարզեցված տարբերակը մագնիսա-տելուրական պրոֆիլավորումը, կիրառում են նավթի ու գազի որոնողական աշխատանքներում:

**ՄԱԳՆԻՍԱՔԻՄԻԱ**, ֆիզիկական քիմիայի բաժին, որն ուսումնասիրում է՝ 1. նյութի կառուցվածքի և հատկությունների կապը, 2. մագնիսական դաշտի ազդեցությունը քիմիական փոխարկումների վրա:

Քիմ. կապ առաջացնելիս արժեքական էլեկտրոնների *սպինները* իրար հակառակ են ուղղվում և նրանց մագնիսական մոմենտները միմյանց չեզոքացնում են: Այդ պատճառով նյութերի մեծ մասը (իոնական, արժեքականությամբ հագեցած օրգ. և անօրգանական նյութեր) դիամագնիսական է (տես *Դիամագնետիզմ*): Եթե այդ նյութերում էլեկտրոնային թաղանթները ձևափոխված (դեֆորմացված) չեն, ապա միացության մեջ մտնող ատոմների և իոնների դիամագնիսական ընկալունակությունները գումարվում են (տես *Ադիտիվություն*): Չհագեցած քիմ. կապերով նյութերն ունեն մագնիսական մոմենտ: Դրանց բաղադրության մեջ սովորաբար մտնում են անցումային տարրերի ատոմներ: Այդպիսի իոնական միացությունները պարամագնիսական են (տես *Պարամագնետիզմ*): Կովալենտ կապերով կապված անցումային տարրեր պարունակող նյութերը պարամագնիսական, ֆեռոմագնիսական կամ հակաֆեռոմագնիսական են: Առաջին երկու դեպքում հնարավոր է գնահատել մագնիսական մոմենտը և կռահել քիմ. կապի բնույթը, երբեմն նաև անցումային տարրի ատոմում չզույգված էլեկտրոնների քանակը: Մագնիսաքիմիական հետազոտությունների համար օգտագործում են հաստատուն կամ փոփոխական մագնիսական դաշտ: Փոփոխական մագնիսական դաշտում նյութում տեղի են ունենում ռեզոնանսի հետ անմիջականորեն կապված կամ չկապված երևույթներ: Էլեկտրամագնիսական էներգիայի ռեզոնանսային կլանման երևույթները լրացուցիչ տեղեկություններ են պարունակում ատոմների ու քիմ. կապի մասին և ուսումնասիրվում են ինքնուրույն եղանակներով (տես *Էլեկտրոնային պարամագնիսական ռեզոնանս, Միջուկային մագնիսական ռեզոնանս, Ֆեռոմագնիսական ռեզոնանս, Միջուկների քիմիական բևեռացում*):

Հաստատուն մագնիսական դաշտը երբեմն փոխում է քիմ. փոխարկումների ընթացքը, ազդում ռադիկալների մասնակցությամբ ընթացող տրիպլետային վիճակների մարման, բյուրեղների և հեղուկների ֆլյուորեսցենցիայի, կոլոիդների կոագուլման վրա: Մագնիսաքիմիական չափումները կիրառվում են քիմ. հետազոտությունների մաքրությունը և դիսպերսված խառնուրդների առկայությունը ստուգելու համար:

**ՄԱԳՆԻՍԱՕՊՏԻԿԱ**, *ֆիզիկայի* բաժին. ուսումնասիրում է մագնիսական դաշտի ազդեցությունը միջավայրի օպտիկական հատկությունների վրա, ինչպես նաև օպ-

տիկական ճառագայթման (լույսի) առաքման, տարածման ու կլանման երևույթները մագնիսական դաշտում գտնվող նյութերում: Մագնիսաօպտիկական հիմնական երևույթներն են. մագնիսական դաշտում սպեկտրային գծերի տրոհումը բաղադրիչների (տես *Զեեմանի երևույթ*), լույսի բևեռացման հարթության պտտումը (Ֆ ա ր ա դ ե յ ի  ե ր և ու յ թ), լույսի երկբեկումը մագնիսական դաշտում գտնվող իզոտրոպ նյութում (տես *Կոտոն-Մուտոնի էֆեկտ*), Քերի մագնիսաօպտիկական երևույթը (տես *Քերի երևույթ*):

XX դ. 60—70-ական թթ. զարգացավ կիսահաղորդիչների և մագնիսակարգավորված բյուրեղների (ֆերիտներ, հակաֆեռոմագնիսական նյութեր) Մ.: Մագնիսաօպտիկական մեթոդները կիրառվում են օպտիկական անցումները պայմանավորող քվանտային վիճակների, նյութի ֆիզիկաքիմիական կառուցվածքի, մետաղների և կիսահաղորդիչների էլեկտրոնային կառուցվածքի, ֆազային անցումների հետազոտման ժամանակ:

*Գրկ.* Б о р н  М., Оптика, пер. с нем., Харьков, 1937; В о н с о в с к и й  С. В., Магнетизм, М., 1971.

**ՄԱԳՆԻՏՆԱՅԱ**, լեռ Հարավային Ուրալի արևելյան լանջին, ՌՍՖՍՀ Չելյաբինսկի մարզում: Բարձրությունը՝ 616 *մ*: Մագնիսական երկաթահանքի խոշոր հանքավայր է: Այստեղ կառուցվել է մետալուրգիական խոշոր կոմբինատ և *Մագնիտոգորսկ* քաղաքը:

**ՄԱԳՆԻՏՈԳՈՐՍԿ**, քաղաք ՌՍՖՍՀ Չելյաբինսկի մարզում: Գտնվում է Մագնիտնայա լեռան ստորոտին, Ուրալ գետի ափին: ՍՍՀՄ մետալուրգիական արդյունաբերության խոշորագույն կենտրոններից է: 410 հզ. բն. (1980): Կան մետալուրգիական կոմբինատ, տրամաչափիչ, ամբարձիչների, լեռնային և մետալուրգիական սարքավորումների նորոգման, մետաղյա իրերի գործարաններ: Զարգացած է շինանյութերի, թեթև ու սննդի արդյունաբերությունը: Ունի լեռնա-մետալուրգիական և մանկավարժական ինստ-ներ, 8 միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություն, 2 թատրոն, հայրենագիտական թանգարան: Հիմնադրվել է 1929—1931-ին: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով (1971):

**ՄԱԳՆԻՏՈՖՈՆ** (< *մագնիս* և ...*ֆոն*), մագնիսական ժապավենի կամ լարի վրա ձայնային ազդանշանների գրառման (տես *Մագնիսական ձայնագրում*) և վերարտադրման սարք: Լինում են միաշավիղ և բազմաշավիղ (մինչև 8 շավիղ) Մ-ներ, որոնք կիրառվում են մոնոֆոնիկ և ստերեոֆոնիկ գրառման և վերարտադրման համար: Մ-ում մագնիսական ժապավենի շարժման ստանդարտ արագություններն են՝ 38,1, 19,05, 9,5, 4,75, 2,4 *սմ/վրկ*: Որքան մեծ է ժապավենի շարժման արագությունը, այնքան բարձր են Մ-ի որակական ցուցանիշները: Տարբերում են Մ-ի հետևյալ տեսակները. մասնագիտական՝ մագնիսական ծակոտաժապավենի վրա ձայնը և պատկերը համաժամանակ գրի առնելու համար (հնչյունային կինո), ստուդիական՝ չծակոտված մագնիսական ժապավենի վրա բարձրորակ ձայնագրություններ կատարելու համար (ռադիոհաղորդում, կինո ևն), կիսամասնագիտական՝ դիսպետչերական խոսակցությունների գրառման համար, կենցաղային (սիրողական ձայնագրում, նկ. 1): Գոյություն




Նկ. 1. Կ ե ն ց ա ղ ա յ ի ն  մ ա գ ն ի տ ո ֆ ո ն ի  պ ա ր զ ե ց վ ա ծ  կ ա ռ ու ց վ ա ծ ք ա յ ի ն  ս խ ե մ ա ն. $Կ_1$ և $Կ_2$—կոճեր, Ժ—մագնիսական ժապավեն, $Հ_1$ և $Հ_2$—ուղղորդիչ հոլովակներ, ՋԳ—ջնջող մագնիսական գլխիկ, ՈՒԳ—ունիվերսալ մագնիսական գլխիկ, ԲՀԳ—բարձր հաճախականության հոսանքի գեներատոր, ԷՄ-էլեկտրասնուցման սարք, ՈՒՈՒ—ունիվերսալ ուժեղացուցիչ, $Φ_1$, $Φ_2$ և $Φ_3$—փոխարկիչներ (Ձ—ձայնագրում, Վ—վերարտադրում), Մտ—մուտքի շղթա, Ի—ձայնագրման մակարդակի ինդիկատոր, Բ—բարձրախոս

ունեն *դիկտոֆոններ*, ռեպորտյորական (ինքնուրույն էլեկտրասնուցումով թեթև փոխադրական սարքեր), ուսումնական Մ-ներ, մագնիտոֆոնային կցորդներ, ինչպես նաև Մ-ի և այլ սարքերի զուգորդումներ (մագնիտոլա, մագնիտոռադիոլա):



«Մայակ-203» մակնիշի կենցաղային մագնիտոֆոն

Սովորաբար մագնիսական ժապավենը փաթաթվում է միջնաձողի (մասնագիտական Մ-ում) կամ կոճի (կիսամասնագիտական և կենցաղային Մ-ում) վրա: Կասետային Մ-ում ժապավենը տեղավորվում է մագնիտոֆոնային փակ կասետում, որը պահպանում է ժապավենը կեղտոտումից և հեշտացնում շահագործումը:

**ՄԱԳՆԻՏՈՒԴԱ ԵՐԿՐԱՇԱՐԺԻ** (< լատ. magnitudo — մեծություն, < magnus — մեծ), պայմանական մեծություն, որը բնութագրում է երկրաշարժերի կամ պայթյունների հետևանքով առաջ եկող առաձգական տատանումների ընդհանուր էներգիան: Տես նաև *Երկրաշարժեր*:

**ՄԱԳՆԻՑԿԻ** Լեոնտի Ֆիլիպովիչ (1669—1739), ռուս մաթեմատիկոս, մանկավարժ: Ըստ որոշ տեղեկությունների, սովորել է Մոսկվայի Սլավոնա-հունա-լատինական ակադեմիայում: 1701-ից մաթեմատիկա է դասավանդել Մաթեմատիկական և նավագնացային գիտությունների դպրոցում: 1703-ին տպագրել է «Թվաբանություն» դասագիրքը, որը մինչև XVIII դ. կեսերը մաթեմատիկայի հիմնական ձեռնարկն էր Ռուսաստանում: Այս դասագիրքը, որը ավելի շուտ մաթ. հանրագիտարան է, մեծ դեր է խաղացել Ռուսաստանում մաթ. գիտելիքների տարածման գործում:

**ՄԱԳՆՈԼԻԱ** (Magnolia), մագնոլիազգիների ընտանիքի մշտադալար կամ տերևաթափ ծառերի, հազվադեպ թփերի ցեղ: Տերևները պարզ են, կաշվե, ամբողջաեզր, հերթադիր, պարունակում են եթերայուղեր, ալկալոիդներ, գլիկոզիդներ: Ծաղիկները երկսեռ են, մեկական, խոշոր, սպիտակ կամ վարդագույն: Պտուղը կազմված է զալարաձև պարկուկներից:



Մ ա գ ն ո լ ի ա. ծյուղը ծաղիկով

Հայտնի է շուրջ 80 տեսակ, տարածված հիմնականում Արևելյան և Հարավ-Արևելյան Ասիայում, Ամերիկայում: ՍՍՀՄ-ում (Կուրիլյան կղզիներ) աճում է M. obovata տեսակը, իսկ Ղրիմում, Կովկասի Սևծովյան ափերին, Միջին Ասիայում, որպես դեկորատիվ բույս, մշակվում է մոտ 15 տեսակ, որից առավել տարածված խ ո շ ո ր ա ծ ա ղ ի կ  Մ. (M. grandiflora) հանդիպում է նաև ՀՍՍՀ Իջևանի և Նոյեմբերյանի շրջաններում: Երևանի բուսաբանական այգում, Իջևանի և Ստեփանավանի դենդրարիներում աճեցվում է կ ո բ ու ս  Մ. (M. kobus): Խոշորածաղիկ Մ-ի տերևների սպիրտային մզվածքն իջեցնում է արյան ճնշումը և օգտագործվում է հիվանդության վաղ շրջանում:

**ՄԱԳՆՈՆ**, փոխազդող *ալիքների* համակարգի տարրական գրգռմանը համապատասխանող *քվազիմասնիկ*: Մագնիսական մի քանի ենթացանցով բյուրեղներում կարող են գոյություն ունենալ էներգետիկ տարբեր սպեկտրներ ունեցող մի քանի տեսակի Մ-ներ: Ենթարկվում է Բոզե-Էյնշտեյնի վիճակագրությանը: Մ-ները փոխազդում են միմյանց և այլ քվազիմասնիկների հետ: Գոյությունը հաստատվել է նեյտրոնների և լույսի ցրման փորձերով:

**ՄԱԳՈՄԱԵՎ** Աբդուլ Մուսլիմ Մուհամեդովիչ [6(18).9.1885, Գրոզնի —28.7.1937, Նալչիկ], ադրբեջանցի սովետական կոմպոզիտոր, դիրիժոր, երաժշտական-հասարակական գործիչ: Ադրբ. ՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1935): Ադրբ. երաժշտա-

կան թատրոնի ստեղծողներից: 1920—1930-ական թթ. եղել է Ադրբեջանի լուսժողկոմատի արվեստի բաժնի վարիչ, Մ. Ֆ. Ախունդովի անվ. օպերայի և բալետի թատրոնի դիրեկտոր և գլխավոր դիրիժոր: Առաջիններից էր, որ զուգորդեց ադրբ. ժող. երգարվեստը և եվրոպական երաժշտական ձևերը: Ու. Հաջիբեկովի հետ կազմել և հրատարակել է ադրբ. ժող. երգերի առաջին ժողովածուն (1927): Ստեղծագործություններից են՝ «Շահ Իսմայիլ» (1916, բեմ. 1919, Բաքու), «Նարգիզ» (1935, Բաքու) օպերաները, սիմֆոնիկ երկեր՝ «Ադրբեջանի դաշտերում», «Ազատագրված ադրբեջանուհու պարը» ևն, ադրբ. ժող. երգերի մշակումներ:

**ՄԱԴԱԳԱՍԿԱՐ** (Madagascar), կղզի Հնդկական օվկիանոսում, Աֆրիկայից մոտ 400 *կմ* արևելք: Տարածությունը 590 հզ. *կմ²* է, երկարությունը՝ մոտ 1600 *կմ*, լայնությունը՝ ավելի քան 600 *կմ*: Բնության և տնտեսության մասին տես *Մադագասկար*, Մադագասկարի Դեմոկրատական Հանրապետություն հոդվածում:

**ՄԱԴԱԳԱՍԿԱՐ**, Մադագասկարի Դեմոկրատական Հանրապետություն (République Démocratique de Madagascar), պետություն Հնդկական օվկիանոսի արևմտյան մասում, Մադագասկար կղզու և հարակից կղզիների վրա: Աֆրիկա մայր ցամաքից բաժանվում է Մոզամբիկի նեղուցով: Տարածությունը 596 հզ. *կմ²* է, բնակչությունը՝ 9 մլն (1979): Մայրաքաղաքը՝ Անտանանարիվու: Վարչականորեն բաժանվում է 6 նահանգի:

**Պետական կարգը**: Մ. դեմոկրատական հանրապետություն է: Գործող սահմանադրությունն ուժի մեջ է 1975-ից: Պետության գլուխը պրեզիդենտն է, որը նաև զինված ուժերի գերագույն գլխավոր հրամանատարն է և Հեղափոխական գերագույն խորհրդի նախագահը: Պետության բարձրագույն մարմինը՝ ազգային ժող. ժողովը (միապալատ պառլամենտ), ունի օրենսդրական իշխանություն: Գործադիր իշխանությունն իրականացնում են պրեզիդենտը, Հեղափոխական գերագույն խորհուրդը և կառավարությունը: Տեղերում գործում են ժող. խորհուրդներ և ավանդական համայնքները՝ ֆուկունուլունաները:

**Բնությունը**: Մադագասկար կղզին ունի թույլ կտրտված ափագիծ: Արլ. և արմ. ափերը ցածրադիր են, արլ-ում շրջափակված դյուներով, արմ-ում՝ կորալային խութերով: Հվ. ափը բարձրադիր է, տեղ-տեղ՝ զառիթափ: Հս-արմ-ում և հս-ում ափագիծը մասնատված է, կան բնական նավահանգրվաններ: Կղզին պալեոզոյի վերջում Աֆրիկա մայր ցամաքից անջատված բեկոր է՝ կազմված հնագույն բյուրեղային և մետամորֆային ապարներից: Կան գրաֆիտի (Տամատավե), փայլարի, ուրանի, ոսկու, թանկարժեք քարերի, քարածխի, գրանիտի, քրոմիտների, պեգմատիտների, բերիլի և այլ հանքավայրեր: Կենտրոնական և արլ. մասերը զբաղեցնում է Բարձր սարավանդը: Ռելիեֆում տիրապետում են 800—1200 *մ* բարձրությունները, ամենաբարձր կետը Ցարատանանա հրաբխային զանգվածում է (2876 *մ*, Մարումուկուտրու լեռ): Կան բազմաթիվ հանգած հրաբուխներ ու տաք աղբյուրներ: Լինում են երկրաշարժեր: Կլիման արևադարձային է, հս-արմ-ում՝ հասարակածային մուսսոնային, Բարձր սարավանդում՝ բարեխառըն, խոնավ: Անտանանարիվուում փետրվարի միջին ջերմաստիճանը 20°C է, հուլիսինը՝ 10°C: Միջին տարեկան տեղումները ավելի քան 1500 *մմ* են, տեղ-տեղ՝ մինչև 3000 *մմ*: Գետային ցանցը խիտ է: Գետերը սահանքավոր են, ջրառատ: Մեծ լիճը Ալաոտրան է: Տարածված են լեռնային կարմրահողերը, բերրի սևահողերը, կարմրադեղին, կարմրագորշ, կարմիր ֆերրալիտային հողերը: Բուսատեսակների մեծ մասն էնդեմիկ է: Արմ-ում տարածված են ասեղնատերև ծառերն ու թփուտները, Բարձր սարավանդում՝ սավաննաները (ցածրաբուն ծառատեսակների հետ), արլ-ում՝ թանկարժեք ծառատեսակներով (էբենոս, սանդալի ծառ) խոնավ արևադարձային անտառները: Բնորոշ կենդանիներն են լեմուրը, միջատակերը, չղջիկը: Թռչունների շատ տեսակներ էնդեմիկ են (կանաչ թութակ, կապույտ աղավնի ևն): Շատ են սողունները, միջատները: Ցուրահատուկ բուսական և կենդանական աշխարհի պահպանման նպատակով ըստեղծվել են արգելավայրեր և ազգային պարկեր:





Բնապատկեր

**Բնակչությունը**: Մոտ 99%-ը *մալգաշներ* են: Պաշտոնական լեզուներն են մալգաշերենն ու ֆրանսերենը, տոմարը՝ գրիգորյանը: Բնակչության կեսից ավելին պահպանում են տեղական հավատալիքները, 40%-ը քրիստոնյաներ են, մնացածը՝ մահմեդականներ: Տնտեսապես ակտիվ բնակչության մեծ մասը (87%) զբաղված է գյուղատնտեսության մեջ: Միջին խտությունը 1 *կմ²*-ի վրա մոտ 17 մարդ է (1979): Առավել խիտ բնակեցված է Անտանանարիվուի շրջակայքը: Մեծ քաղաքներն են Անտանանարիվուն, Տամատավեն, Մաձունգան, Ֆիանարանցուան, Դիեգո Սուարեսը:

**Պատմական ակնարկ**: Ենթադրվում է, որ կղզին բնակեցվել է ուշ հին քարի դարում: Մ. թ. ա. X—VI դդ. կղզում հայտնվել են ինդոնեզիացիները, պոլինեզիացիները, մելանեզիացիները, ավելի ուշ՝ բանտու ցեղերը և արաբները: Մ. թ. XIV դ. Մ-ի կենտրոնում կազմավորվել է Իմերինա (Իմերնա) պետությունը: XVI—XVII դդ. ևս ստեղծվել են մի շարք մանր պետություններ, որոնք XIX դ. միավորվել են կենտրոնացված պետության՝ Մալգաշական կամ Մ-ի թագավորության մեջ՝ Իմերինայի կառավարիչների գլխավորությամբ: Երկրի կենտրոնական շրջաններում գերակշռում էին ֆեոդ. հարաբերությունները, իսկ ծովափնյա շրջաններում պահպանվել էին տոհմատիրության մնացուկները: XVI դ. կղզում հայտնվել են պորտուգալացիները: XIX դ. սկզբին ուժեղացել է անգլո-ֆրանս. պայքարը կղզու համար: XIX դ. 40—70-ական թթ. Մ. ապրել է տնտ. և մշակութային վերելք: Զարգացել են ապրանքադրամային հարաբերությունները, հիմնվել են արդ. մանր ձեռնարկություններ: 1876-ին հռչակվել է 8-ից 16 տարեկան երեխաների համընդհա-

նուր պարտադիր ուսուցում: Աճել է ազգային մտավորականությունը, ստեղծվել են տպարաններ, հրատարակվել պարբերականներ:

1883-ին Մ. ներխուժեցին ֆրանս. զորքերը: 1885-ին Ֆրանսիան իր պրոտեկտորատը հաստատեց Մ-ում, 1896-ին զավթեց, վերացրեց միապետությունը (1897):

Գաղութարարների դեմ մալգաշների տարերային ապստամբությունններն ու պարտիզանական ելույթները երկրորդ համաշխարհային պատերազմից (1939—1945) հետո վերաճեցին կազմակերպված ազգային-ազատագրական շարժման: 1946-ին ստեղծվեց առաջին քաղ. կազմակերպությունը՝ Մալգաշական վերածնության դեմոկրատական շարժումը, որը հայտարարվեց օրենքից դուրս: 1950-ական թթ. առաջացան մի շարք կուսակցություններ, որոնք առաջ քաշեցին Մ-ին անկախություն տալու պահանջ: Գաղութային իշխանությունների թույլտվությամբ ստեղծվեցին բուրժուա-ռեֆորմիստական կուսակցություններ [ամենաազդեցիկը սոցիալ-դեմոկրատական կուսակցությունն էր (ՍԴԿ)], որոնք պահանջում էին անկախություն՝ Ֆրանս. համագործակցության շրջանակներում: 1958-ին Մ. հռչակվեց ինքնավար Մալգաշական Հանրապետություն՝ Ֆրանս. համագործակցության կազմում: Նույն թվականին մի շարք քաղ. կազմակերպություններ կազմեցին Մ-ի անկախության կոնգրեսի կուսակցությունը (ՄԱԿԿ), որը պահանջում էր անհապաղ և լիակատար անկախություն: 1960-ի հունիսի 26-ին Մալգաշական Հանրապետությունն անկախ հռչակվեց, պրեզիդենտ դարձավ ՍԴԿ-ի ղեկավար Ֆ. Ցիրանանան. սեպտեմբերին Մ. մտավ ՄԱԿ-ի մեջ: Սակայն Ֆրանսիայի հետ կնքած համաձայնագրով (1960-ի ապրիլ) երկրի ինքնուրույնությունը սահմանափակ էր: Ֆրանսիան հսկում էր Մ-ի զինված ուժերը, տնտեսությունը, բարձրագույն կրթությունը ևն: Ֆ. Ցիրանանայի կառավարության վարած ներքին և արտաքին քաղաքականությունը երկրում առաջ բերեց զանգվածային հուզումներ, ցույցեր, համընդհանուր գործադուլներ: 1972-ի մայիսին Ֆ. Ցիրանանան հարկադրված էր իշխանությունը հանձնել զինվորականությանը՝ զեն. Գ. Ռամանանցուայի (պրեմիեր մինիստր) գլխավորությամբ: Նոր կառավարությունը նախ չեղյալ հայտարարեց Հարավ-Աֆրիկյան Հանրապետության հետ տնտ. համագործակցության պայմանագիրը, 1973-ին՝ 1960-ի ֆրանս-մալգաշական համաձայնագիրը, երկրից դուրս բերվեցին ֆրանս. զորքերը:

1972-ին դիվանագիտական հարաբերություններ հաստատվեցին Մ-ի և ՍՍՀՄ-ի միջև, 1974-ին կնքվեցին տնտ. և տեխ. համագործակցության համաձայնագրեր:

1974—75-ին ուժեղացավ օպոզիցիայի պայքարը կառավարության առաջադիմական կուրսի դեմ: 1975-ի փետր. 5-ին Գ. Ռամանանցուան հրաժարական տվեց. փետր. 11-ին երկրի կառավարումն անցավ Զինվորական դիրեկտորիային: Արգելվեց քաղ. կուսակցությունների գործունեությունը: 1975-ի հունիսի 15-ին ստեղծվեց Հեղափոխական գերագույն



Ջրվեժներ երկրի հարավ-արևելքում



Անտանանարիվուի ընդհանուր տեսքը

խորհուրդ (ՀԳԽ), որի նախագահ, պետության և կառավարության ղեկավար դարձավ Դ. Ռացիրական (դեկտեմբերից՝ պրեզիդենտ): Կառավարության ծրագիրը շարադրվեց «Մալգաշական սոցիալիստական հեղափոխության խարտիայի» մեջ, որը գլխավոր նպատակ հռչակեց ավանդական համայնքների (ֆուկունուլունա) վրա հիմնված սոցիալիզմի սկզբունքով հասարակության ստեղծումը: 1975-ի դեկտ. 30-ին հռչակվեց Մադագասկարի Դեմոկրատական Հանրապետությունը: 1976-ին ստեղծվեց Մալգաշական հեղափոխության ավանգարդ (ՄՀԱ) կուսակցությունը, որը դարձավ կառավարող: 1975—80-ին Մ-ի կառավարությունը իրագործեց առաջադիմական միջոցառումներ, ազգայնացրեց օտարերկրյա ընկերությունների ձեռնարկությունները ևն: Արտաքին քաղաքականության ասպարեզում կառավարությունը վարում է չմիանալու, իմպերիալիզմի, գաղութատիրության և նեոգաղութատիրության դեմ պայքարի գիծ:

**Քաղաքական կուսակցությունները և արհմիությունները:** Մալգաշական հեղափոխության ավանգարդ (ՄՀԱ), կառավարող կուսակցությունն է, ստեղծվել է 1976-ին: Մ-ի անկախության կոնգրեսի կուսակցություն (ՄԱԿԿ), ստեղծվել է 1958-ին, 1962-ից հանդես է գալիս գիտական սոցիալիզմի դիրքերից: Ազգային միասնության ձգտում (ԱՄՁ), հիմնվել է 1973-ին: Մ-ի անկախության համար ազգային շարժում (ՄԱԱՇ), ստեղծվել է 1958-ին: Մ-ի անկախության համար սոցիալիստական ազգային շարժում (ՄԱՍԱՇ), ստեղծվել է 1977-ին՝ ՄԱԱՇ կուսակցության պառակտման հետևանքով: Մ-ի քրիստոնեական դեմոկրատների միություն (ՄՔԴՄ), հիմնվել է 1977-ին, կղերական կուսակցություն է: Իշխանություն հասարակ մարդկանց (ԻՀՄ), ստեղծվել է 1972-ին: Վերոհիշյալ կուսակցությունները (բացի ՄԱԱՇ-ից) միավորված են Հեղափոխության պաշտպանության ազգային ճակատի (ՀՊԱՃ) մեջ: Մ-ի աշխատավորների արհմիությունների ֆեդերացիա, հիմնվել է 1956-ին, մտնում է ԱՀՖ-ի մեջ: Մ-ի աշխատավորների արհմիությունների հեղափոխական ֆեդերացիա, ստեղծվել է 1977-ին, ունի մոտ 25 հզ. անդամ, կառավարական արհմիութենական կազմակերպություն է: Մալգաշական հեղափոխականների արհմիություն, հիմնվել է 1977-ին: Մալգաշական աշխատավորների կոնֆեդերացիա, հիմնվել է 1957-ին:

**Տնտեսա-աշխարհագրական ակնարկ:** Մ. ագրարային երկիր է՝ թույլ զարգացած տնտեսությամբ: Մինչև անկախությունը տնտեսությունն ուներ գաղութային բնույթ: Անկախությունից (1960) հետո էլ տնտեսության մեջ մեծ տեղ էր գրավում օտարերկրյա (հատկապես ֆրանս.) կապիտալը, ակտիվորեն գործում էին արևմտագերմ., ամերիկյան, իտալ., ճապոնական ֆիրմաները: 1972-ից և հատկապես 1975-ից հետո ազգայնացվեցին բանկերը, ապահովագրական ընկերությունները, օտարերկրյա մոնոպոլիաները: 1978-ից սկսվել է տնտեսության զարգացման հեռանկարային ծրագրի (1978—2000 թթ.) կենսագործումը, որի նպատակն է «սոցիալիստական տնտեսության ստեղծումը»:

Տնտեսության հիմքը գյուղատնտեսությունն է: Գերակշռում է համայնական հողօգտագործումը: Մշակում են բրինձ, բամբակենի, սուրճ, պղպեղ, մեխակ, մանիոկա, եգիպտացորեն, սորգո, բատատ, գետնանուշ, կարտոֆիլ, վանիլ, ծխախոտ, շաքարեղեգ ևն: Անասնապահությունը թույլ է զարգացած, թեև բնակչության մեկ շնչին ընկնող խոշոր եղջերավոր անասունների (զեբու) գլխաքանակով Մ. Աֆրիկայում գրավում է առաջին տեղերից մեկը: 1979-ին Մ-ում կար 10 մլն խոշոր եղջերավոր անասուն: Զբաղվում են նաև ձկնորսությամբ:

Արդյունաբերությունը ներկայացված է կիսատնայնագործական ձեռնարկություններով: Կան ալրաղաց, բրնձաձատիչ, մսի պահածոների, շաքարի, ծխախոտի ձեռնարկություններ, լեռնահանքային արդյունաբերություն:

Տրանսպորտի հիմնական միջոցը ավտոմոբիլն է: Ավտոճանապարհների երկարությունը 38 հզ. *կմ* է, երկաթուղիներինը՝ 880 *կմ* (1979): Կարևոր է ծովային փոխադրումների դերը: Խոշոր նավահանգիստներն են Տամատավեն, Մաժունգան Դիեգո Սուարեսը: Միջազգային օդանավակայաններ կան Անտանանարիվուում և Իվատու քաղաքներում:

Արտաքին առևտուրը: Արտահանում է սուրճ, վանիլ, մեխակ, պղպեղ, շաքար, միս և մսի պահածոներ, ձուկ, գրաֆիտ, փայլար: Ներմուծում է լայն սպառման ապրանքներ, պարեն, մեքենաներ, սարքավորումներ ևն: Առևտրական հիմնական գործընկերներն են Ֆրանսիան, ԳՖՀ, ԱՄՆ, Ճապոնիան:

Դրամական միավորը մալգաշական ֆրանկն է, որը= է 0,02 ֆրանս. ֆրանկի:

**Բժշկա-աշխարհագրական բնութագիրը:** 1972-ին ծնունդը կազմել է 1000 բնակչին՝ 34,1, մահացությունը՝ 10,2, մանկական մահացությունը 1000 ողջ ծնվածին՝ 53,2 (1971): Տղամարդկանց կյանքի միջին տևողությունը 37,5 տարի է, կանանցը՝ 38,3: Տարածված են ստամոքսա-աղիքային, վարակիչ, մաշկա-վեներական, ճիճվային հիվանդությունները, տուբերկուլոզը, մալարիան, բորը, կա ժանտախտի բնական օջախ: 1973-ին գործել է 834 հիվանդանոցային հիմնարկ՝ 19,8 հզ. մահճակալով (1000 բնակչին՝ 2,5 մահճակալ), արտահիվանդանոցային օգնություն են ցույց տվել ամբուլատորային 75 բաժանմունք (հիվանդանոցային), 4 պոլիկլինիկա, բժշկ. 34 շրջան, 22 դիսպանսեր, 500 բժշկ. կետ, մունիցիպալային 8 սանիտարական բյուրո և շարժական 11 բրիգադ: 1973-ին աշխատել են 687 բժիշկ (11,6 հզ. բնակչին՝ 1 բժիշկ), 80 ատամնաբույժ, 100 դեղագործ, 3,4 հզ. միջին բուժաշխատող: Բժշկ. կրթություն ստանում են Ֆրանսիայի համալսարաններում (Անտանանարիվուի համալսարանին կից ազգային բժշկ. դպրոցում 2-ամյա դասընթացից հետո):

**Լուսավորությունը և գիտական հիմնարկները:** Առաջին դպրոցները հիմնել են միսիոներները XVIII դ. վերջին — XIX դ. սկզբին: Մինչև անկախություն ձեռք բերելը (1960) անգրագետ էր մեծահասակ բնակչության 60%-ը, դպրոցներում սովորում էր երեխաների մոտ 30%-ը: Ժողկրթության համակարգի մեջ մտնում են 6-ամյա տարրական դպրոցները (ընդունվում են 6 տարեկանները, ուսուցումը՝ մալգաշերեն), հանրակրթական և տեխ. 4-ամյա կոլեջները (ոչ լրիվ միջնակարգ կրթություն) և 7-ամյա լիցեյները, որոնք տալիս են լրիվ միջնակարգ կրթություն և բուհ ընդունվելու իրավունք: Միջնակարգ դպրոցում ուսուցումը ֆրանսերեն է: Գործում են նաև մասնավոր, հիմնականում՝ միսիոներական դպրոցներ: Միակ բարձրագույն ուս. հաստատությունը դը Գոլի անվ. համալսարանն է (1961, Անտանանարիվու): Անտանանարիվուում են գտնըվում Ազգային գրադարանը (1961) և Ազգային պատմության թանգարանը, ինչպես նաև գիտական հիմնարկների մեծ մասը՝ Մալգաշական ակադեմիան (1902), Մ-ի աշխարհագրության ազգային ինստ-ը (1945) ևն: Մ-ում գործում են նաև ֆրանս. մի շարք գիտահետազոտական հիմնարկների (Պաստյորի ինստ. ևն) մասնաճյուղեր և բաժանմունքներ:

**Մամուլը, ռադիոհաղորդումները, հեռուստատեսությունը:** Մ-ում լույս է տեսնում ավելի քան 200 պարբերական հրատարակություն՝ մալգաշերեն և ֆրանսերեն: Առավել խոշորներն են՝ «Մադագասկար մատեն» («Le Madagascar Matin», 1962-ից) օրաթերթը, «Ժուռնալ օֆիսիել դը լա Ռեպյուբլիկ Մալգաշ» («Journal Officiel de la République Malgache», 1830-ից), «Ռեպյուբլիկ» («La République», 1956-ից) շաբաթաթերթերը, բոլորն էլ՝ ֆրանսերեն, «Մադագասիկարա Մահալեոտենա» («Madagasicara Mahaleotena», 1960-ից), «Իմունգու վաովաո» («Imongo Vaovao», 1954-ից), «Տոլոնա» («Tolona») օրաթերթերը, «Ֆանասինա» («Fanasina», 1957-ից) շաբաթաթերթը, «Հեհի» («Hehy», 1959-ից) երգիծական թերթը, բոլորն էլ՝ մալգաշերեն: 1962-ից գործում է Մադագասկար պրես ազգային ինֆորմացիոն գործակալությունը: Մալգաշական ազգային ռադիոհաղորդումներ կառավարական ծառայությունը հիմնվել է 1960-ին, հեռուստատեսությունը՝ 1967-ին:


Մահարձաններ, փայտ (սակալավա ժողովուրդ)

**Գրականությունը:** Զարգանում է մալգաշերենով և ֆրանսերենով: Գրական մալգաշերենն սկսել է կազմավորվել XIX դ. 2-րդ կեսին: 1930—40-ական թթ. աչքի են ընկել ֆրանսերենով ստեղծագործող մի խումբ գրողներ, որոնք ձգտել են պատկերել ժողովրդի կյանքը, նրա պայքարը գաղութային լծի դեմ: Այդ խմբի առաջին ականավոր ներկայացուցիչն է եղել բանաստեղծ Ժ. Ժ. Ռաբեարիվելուն (1901—37): Այս սերնդի հայտնի բանաստեղծներից են Ժ. Ռաբեմանանջարան (ծն. 1913) և Ֆ. Ռանայվուն (ծն. 1914), որոնք Մ-ի բնությունն ու նրա ժողովրդի սովորույթները երգելու հետ միաժամանակ կոչ են արել տապալել օտարերկրյա լուծը:

Մ-ի 1950—70-ական թթ. գրականության համար բնութագրական է հետագա զարգացումը մալգաշերենով: Այս շրջանի նշանավոր գրական դեմքն է հասարակական գործիչ, թարգմանիչ, պատմվածքների ու վեպերի հեղինակ Ա. Ռացիֆեհերան: Պոեզիայում հանդես են գալիս Ռադուն, Ժ. Նարիվունին, Ժ. Ռամինուսուան, Մ. Ռասամյուելը:

**Ճարտարապետությունը և կերպարվեստը:** Բնակլիմայական պայմանների բերումով Մ-ի գյուղական տները բազմազան են, սակայն ունեն ընդհանուր գծեր՝ հատակագծում ուղղանկյուն են, երկլանջ տանիքով, վերձիգ համաչափություններով: Քաղաքների շինարարությունը զարգացել է XIX դ. վերջից: XIX դ.—XX դ. 1-ին կեսին պալատները, բողոքական ու կաթոլիկական տաճարները, դամբարանները կառուցվել են եվրոպական էկլեկտիկայի ոգով: 1920-ական թթ. ֆրանսիացի ճարտարապետ Գ. Կեսենը կազմել է Տանանարիվե (այժմ՝ Անտանանարիվու), Տամատավե, Անցիրաբե քաղաքների վերակառուցման նախագծերը: Սկսած 1950-ական թթ. կառուցվում են լակոնիկ ձևերով շենքեր, օգտագործվում են բետոնե կոնստրուկցիաներ, ապակի: Ժող. արվեստներից տարածված են փայտի քանդակագործությունը, հյուսածո իրերի պատրաստումը, ջուլհակությունը: 1930-ական թըվականներից զարգանում է պրոֆեսիոնալ գեղանկարչությունը:


Կենտրոնական շրջանների բնակելի տներ


Ծիսական «սոլո» զույգ մարմիններ (փայտ)

Գրկ. Корнеев Л. А., Образование Малагасийской республики, М., 1963; Бардина Ю. Я., Малагасийская республика, М., 1972; Орлова А. С., Общественный строй мальгашей в XIX в., М., 1958; Рабеманандзара Р. В., Мадагаскар. История мальгашской нации, пер. с франц., М., 1956; Трубицын В. И., Экономика Малагасийской республики, М., 1969; Сказки и пословицы Мадагаскара, пер. с мальгашского, М., 1962; Сказки Мадагаскара, пер. с франц., М., 1965; Urbain-Faublée M., L'art malgache, P., 1963.

**ՄԱԴԱԹՅԱՆ** Աշոտ (1884, Թեհրան — 22.4.1965, Ստամբուլ), հայ դերասան, ռեժիսոր և թարգմանիչ: 1902-ին ընդունվել է Մ. Մնակյանի դերասանական խումբը, 1903-ին՝ Բեշատ Բըլվանի թուրք. խումբը: 1908-ի երիտթուրք. հեղափոխությունից հետո Ե. Շահենի հետ կազմակերպել է «Ազատ թատրոն»-ը: 1910-ական թթ. մասնակցել է Հ. Զարիֆյանի, Վ. Փափազյանի, Մ., Հ. և Վ. Ֆեներյան քույրերի ներկայացումներին: 1919—23-ին եղել է Կ. Պոլսի հայ դրամատիկ թատերախմբի կազմակերպիչներից ու ռեժիսորներից (բեմադրել է Շեքսպիրի «Համլետ»-ը, խաղացել Համլետի դերը): Հետագա տարիներին աշխատել է Քաղաքապետական թատրոնում, ունեցել սեփական ստուդիա: Խաղացել է ավելի քան հիսուն դեր և բեմադրել

շուրջ երեք հարյուր պիես: Թուրքերեն է թարգմանել Գ. Սունդուկյանի «Պեպո» (բեմադրել է 1934-ին), Շիրվանզադեի «Պատվի համար», «Նամուս», Հ. Պարոնյանի «Պաղտասար աղբար», Լ. Շանթի «Հին աստվածներ», հայերենի Ա. Դյումա-որդու «Կամելիազարդ տիկինը», Ա. Դյումա-հոր «Քինը» և այլ ստեղծագործություններ:
*Բ. Հովակիմյան*

**ՄԱԴԱԹՅԱՆ** Եղիշե Միքայելի (1865, Շուշի —1918, Խարկով), հայ գրականագետ, թարգմանիչ: Սովորել է Մոսկվայում՝ Լազարյան ճեմարանում, ապա՝ համալսարանում (1884—88), որն ավարտել է «Փավստոս Բուզանդ» (առանձին գրքով լույս է տեսել 1890-ին, Վիեննայում) ուսումնասիրության պաշտպանությամբ: 1888—89-ին շրջագայել է Եվրոպայում: 1890—92-ին եղել է տեսուչ Շուշիի հոգևոր դպրոցում: Այնուհետև դասավանդել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանում և Թիֆլիսի Ներսիսյան դպրոցում: Հ. Տենի, Գամառ-Քաթիպայի, Ս. Շահազիզի մասին գրականագիտական հոդվածներով հանդես է եկել «Նովոյե օբոզրենիե» («Новое обозрение»), «Արարատ» և «Մուրճ» պարբերականներում: Թարգմանել է Բայրոնի, Բերանժեի, Լերմոնտովի ստեղծագործություններից: Հաճախ ստորագրել է «Վանգ»:

*Գրկ.* Մ ա ղ ո յ ա ն Գ. Ա., Եղիշե Մադաթյանի և Գրիգոր Խալաթյանցի նամակագրությունից, «ԼՀԳ», 1973, № 6:
*Լ. Մուրադյան*

**ՄԱԴԱԹՅԱՆ** Վասակ Համբարձումի (28.5.1845, Երևան —1914, Երևան), հայ դրամատուրգ: Սովորել է Մոսկվայի Լազարյան ճեմարանում, խորացել արլ. լեզուների մեջ: Ավարտել է Պետերբուրգի (այժմ՝ Լենինգրադ) զինվորական ակադեմիան: 1870-ական թթ. սկզբներին զինվորական ծառայության մեջ է եղել Կովկասում, ապա պաշտոնավարել է Կարսում, Ալեքսանդրապոլում (այժմ՝ Լենինական) և այլուր: Երևանի նահանգապետական դիվանատանը աշխատել է որպես թարգմանիչ: 1871-ին Պետերբուրգում հրատարակվել է նրա «Փնջիկ» տաղերի գրքույկը: Հայ կենցաղային կատակերգության նմուշներից են Մ-ի «Կըռթ-կըռթ» (1880), «Մադոյի կտակը» (1888) վոդևիլները, որոնք բեմադրվել են Երևանում (1876), Թիֆլիսում: Գրել է նաև պիեսներ (հայատառ ադրբեջաներեն)՝ «Ժլատությունը թշնամի է վաստակում» (1894, հետագայում կոչվել է «Քույր և եղբայր»), «Աներևույթ շալ» (1900), որոնք ներկայացվել են ադրբ. բեմում:

*Գրկ.* Հայ նոր գրականության պատմություն, հ. 3, Ե., 1964: Թ ե ր զ ի բ ա շ յ ա ն Վ., Հայ դրամատուրգիայի պատմություն, հ. 2, Ե., 1964:
*Լ. Սամսարյան*

**ՄԱԴԱԹՈՎ**, Մ ա դ ա թ յ ա ն Վ ա լ ե ր ի ա ն (Ռոստոմ) Գ ր ի գ ո ր ի [1782, գ. Ավետարանոց (այժմ՝ գ. Չանախչի, ԼՂԻՄ Ասկերանի շրջանում)—4.11.1829, Շումլա (Բուլղարիայում)], ռուսական բանակի հայազգի զորավար, գեներալ-լեյտենանտ (29.9.1826): 1799-ին Պետերբուրգում ընդունվել է Պրեոբրաժենսկի գունդ, որպես պրապորշչիկ, ապա տեղափոխվել Պավլովյան գրենադերյան, Մենգրելյան հետևակային գնդերը: Մասնակցել է 1806—12-ի ռուս-թուրքական պատերազմին, աչքի ընկել Բատինի ճակատամարտում (1810): 1812-ի Հայրենական պատերազմում եղել է հեծյալ ջոկատների հրամանատար: Պարգևատրվել է Ս. Աննայի 2-րդ աստիճանի շքանշանով և ստացել գնդապետի կոչում: Լայպցիգի ճակատամարտում (1813, հոկտ. 16—19) ծանր վիրավորվել է: Ցուցաբերած անձնական խիզախության համար նրան շնորհվել է գեներալ-մայորի կոչում:



Վ. Գ. Մադաթով



Հ. Մ. Մադեյան

1816-ին Մ. նշանակվել է Ղարաբաղում տեղավորված ռուս. զորքերի հրամանատար, իսկ 1817-ից՝ Ղարաբաղի, Շիրվանի և Շաքիի խանությունների օկրուգային պետ: Մասնակցել է Դաղստանի լեռնականների դեմ մղած կռիվներին և 1826—1828-ի ռուս-պարսկական պատերազմին: Մ-ի հրամանատարությամբ գործող փոքրաթիվ ջոկատը (2000 զինվոր) 1826-ի սեպտ. 3-ին Շամխորի մոտ փայլուն հաղթանակ տարավ պարսկ. 10-հազարանոց բանակի նկատմամբ և մասնակցեց սեպտ. 13-ին Ելիզավետպոլի (այժմ՝ Կիրովաբադ) ճակատամարտին: Նրա զորքերը 1826-ի աշնանը Ղարաբաղը լիովին մաքրեցին պարսկ. նվաճողներից: 1828—29-ի ռուս-թուրքական պատերազմի ժամանակ Մ. կռվել է Դանուբյան բանակում: Նրա հեծյալ դիվիզիան փայլուն հաղթանակ տարավ բուլղ. Շումլա բերդի մոտ, գրավեց Իսակչեյ և Գիրսով ամրոցները: Այստեղ Մ. հիվանդացավ ու վախճանվեց: Հետագայում նրա աճյունը տեղափոխվեց Պետերբուրգ և ամփոփվեց Ալեքսանդր Նևսկու վանքում:

*Գրկ.* Կյանք գեներալ-լեյտենանտ Մատաթովին, Շուշի, 1870: Ե ր ի ց յ ա ն Ա., Ամենայն Հայոց կաթողիկոսությունը և Կովկասի հայք XIX դարում, մաս 1, Թ., 1894: Թ ե ր զ ի բ ա շ յ ա ն Վ., Գեներալ-մայոր Վ. Գ. Մադաթով, Ե., 1942:
*Գ. Սարգսյան*

**ՄԱԴԱԹՔԵՆԴ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Ասկերանի շրջանում, շրջկենտրոնից մոտ 37 *կմ* հարավ: Միավորված է Ղարաբուլաղի կոլտնտեսության հետ: Ունի տարրական դպրոց, գրադարան, ակումբ: Մ-ում կա եկեղեցի (Ս. Աստվածածին, XVIII դ.):

**ՄԱԴԱՆ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Սղերդի գավառի Շիրվանի գավառակում: 1909-ին ուներ 30 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանցից շատերը զոհվել են աքսորի ճանապարհին, փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՄԱԴԵՅԱՆ** (Մատեյան) Հարություն Մարտիրոսի (ծն. 10.4.1904, Ադանա), Լիբանանի կոմունիստական կուսակցության (ԼԿԿ) գործիչ, լրագրող, հրապարակախոս: Հոկտեմբերյան հեղափոխության ազդեցությամբ երիտասարդական շրջանից համակվել է ազատագրական գաղափարներով և 1922-ին ընդգրկվել կոմունիստական շարժման մեջ: Մասնակցել է Լիբանանի «Սպարտակ երիտասարդություն» կոմունիստական կազմակերպության հիմնադրմանը (1924), ընտրվել նրա քարտուղար: Մ. ԼԿԿ-ի հայկ. մասնաճյուղի հիմնադիրներից է, ընտրվել է Լիբանանի կոմկուսի ԿԿ կազմում: 1926—28-ին գտնվել է բանտարկության մեջ: Եղել է մի շարք առաջադիմական թերթերի («Նոր փարոս», «Սպարտակ», «Կարմիր արշալույս», «Մարտակոչ», «Ժողովրդի ձայն») պատասխանատու խմբագիր: 1971-ից ԼԿԿ օրգան «Կանչ» շաբաթաթերթի խմբագիրն է: Մ. տարբեր տարիների ընտրվել է ԼԿԿ ԿԿ քարտուղարը, 1943—75-ին՝ քաղբյուրոյի անդամ, Լիբանանի կոմկուսի պատվիրակության կազմում մասնակցել է ՍՄԿԿ XX համագումարին: Բազմիցս եղել է ՍՍՀՄ-ում: Պարգևատրվել է Ժողովուրդների բարեկամության շքանշանով (1974):

**ՄԱԴԵՅՐԱ** (Madeira), գետ Բոլիվիայում և Բրազիլիայում, Ամազոնի աջ, ամենախոշոր վտակը: Կազմվում է Անդերից սկիզբ առնող Մամորի և Բենի գետերի խառնուրդից: Երկարությունը 3230 *կմ* է, ավազանը՝ 1158 հզ. *կմ*$^2$: Վերին հոսանքում առաջացնելով սահանքների և ջրվեժների շարք՝ շրջանցում է Բրազիլական բարձրավանդակը, հոսում Ամազոնի դաշտավայրով: Ջրի միջին ծախսը՝ ավելի քան 4200 *մ*$^3$/*վրկ*: Նավարկելի է մինչև Պորտու Վելյու քաղաքը: Մ-ի ափերին են Պորտու Վելյու, Ումայտա, Մանիկորե քաղաքները:

**ՄԱԴԵՅՐԱ** (Madeira), կղզիախումբ Ատլանտյան օվկիանոսում, Աֆրիկայի հյուսիս-արևմտյան ափերի մոտ: Ամենախոշոր կղզին Մադեյրան է: Կազմում է Պորտուգալիայի Ֆունշալ օկրուգը (տարածությունը՝ 797 *կմ*$^2$, բն. մոտ 280 հզ., 1972): Առավելագույն բարձրությունը 1861 *մ* է: Մ-ում զբաղվում են բանանի մշակությամբ, այգեգործությամբ, գինեգործությամբ: Ձմեռային առողջավայր է: Գլխավոր քաղաքն ու նավահանգիստը Ֆունշալն է:

**ՄԱԴԻՆԱ**, գյուղ Հայկական ՍՍՀ Մարտունու շրջանում, Արգիճի գետի ձախ ափին, շրջկենտրոնից 10 *կմ* հարավ-արևմուտք: Կոլտնտեսությունն զբաղվում է հացահատիկի, կարտոֆիլի, ծխախոտի, կերային կուլտուրաների մշակությամբ և անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կինո, կապի բաժանմունք, հեռախոսակայան,

Մադինա



կենցաղպաշտպանական տաղավար, բուժկայան: Բնակիչները եկել են նույն շրջանի Ներքին Գետաշեն գյուղից, 1922-ին: Մ-ի մոտ է համանուն ՀԷԿ-ը:

**ՄԱԴԼԵՆՅԱՆ ՄՇԱԿՈՒՅԹ**, ուշ հին քարի դարի մշակույթ (մ. թ. ա. 15000—8000): Հաջորդել է *Սոլյուտրեյան մշակույթին* և նախորդել *Ազիլյան մշակույթին*: Բնորոշել է ֆրանս. հնագետ Գ. Մորտիյեն (1860-ական թթ.) և կոչել Ֆրանսիայում գտնվող Լա Մադլեն քարայրի անունով: Մ. մ. տարածված է Ֆրանսիայի, Իսպանիայի, Շվեյցարիայի, Բելգիայի, ԳՖՀ, ԳԴՀ տարածքներում և ունի մի շարք տեղական տարատեսակներ: Մ. մ-ի ժամանակ տիրապետող են դարձել կայծքարե բազմազան հատիչները, ծակիչները, քերիչները: Բարձր զարգացման է հասել ոսկրի մշակումը: Բնորոշ են ոսկորների և եղջյուրների վրա փորագիր պատկերները, եղջյուրներից, մամոնտի ոսկորներից ու ժանիքներից քանդակները, միագույն և բազմագույն պատկերները քարայրերի պատերին ու առաստաղներին: Մադլենյան որսորդները բնակվել են առավելապես քարայրերում, ինչպես և ոսկրից ու մորթուց շինված կացարաններում, հաճախ տեղափոխվել են՝ հետապնդելով հս. եղջերուների հոտերին: Մ. մ., հավանաբար, համընկնում է մայրիշխանական տոհմի ժամանակաշրջանին: Հայաստանում ուշ քարի դարի կայաններից (Արտին լեռան, Հրազդանի ևն) գտնվել են մադլենյան ժամանակաշրջանի օբսիդիանե, նուրբ մշակված դանակաձև շեղբեր, ծակիչներ, սրածայրեր, դուրեր, կտրիչներ ևն:

**ՄԱԴՀՅԱ ՊՐԱԴԵՇ**, նահանգ (1956-ից) Հնդկաստանի կենտրոնական մասում: Տարածությունը 444 հզ. $կմ^2$ է, բն. 46,1 մլն (1975): Վարչական կենտրոնը՝ Բհոպալ: Գրավում է Դեկանի սարահարթի հս. մասը, Նարմադա գետի հովիտը, Վինդհիյա լեռները, Մալվա լավային սարավանդի մեծ մասը: Հս-ում մտնում է Ինդոս-Գանգեսյան հարթավայր: Կլիման արևադարձային է, մուսսոնային: Տարեկան տեղումները 700—1600 *մմ* են: Տարածքի 1/3-ը գրավում են անտառները: Տարածված են կարմրահողերը և սևահողերը (ռեգուրներ): Մ. Պ. ագրարային նահանգ է, արագ զարգացող արդյունաբերությամբ: Մշակում են բրինձ, կորեկ, ցորեն, բամբակ, յուղատու բույսեր: Զարգացած է շերամապահությունը («տասար» մետաքս): Խոշոր եղջերավոր անասունները օգտագործվում են հիմնականում որպես քաշող ուժ: Մ. Պ. Հնդկաստանում գրավում է առաջին տեղերից մեկը մանգանի և երկաթի հանքանյութի, բոքսիտների, ածխի և հրակայուն կավերի արդյունահանությամբ: Երկրի ալմաստի արդյունահանության միակ շրջանն է: Զարգացած է բամբակեղենի, շինանյութերի արտադրությունը, մետալուրգիան, մետաղամշակությունը և մեքենաշինությունը: Կան խոշոր ՋԷԿ-եր, շաքարի գործարաններ, լրագրային թղթի ու արհեստական գործվածքների ֆաբրիկաներ, քիմ. գործարան:

**ՄԱԴՆԻԿ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Մուշի գավառում: 1909-ին ուներ 15 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել և զոհվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ:

**ՄԱԴՈՅԱՆ** Լևոն Մանուկի (10.8.1909, Ալեքսանդրապոլ —19.9.1964, Երևան), հայ սովետական դուդուկահար: ՀՍՍՀ ժող. արտիստ (1961): 1923-ից աշխատել է Հայֆիլհարմոնիայի Լենինականի բաժանմունքի արլ. գործիքների անսամբլում:


Լ. Մ. Մադոյան

1939-ին տեղափոխվել է Երևան: 1952-ից Հայաստանի ռադիոյի և հեռուստատեսության ժող. գործիքների անսամբլի մենակատարն էր: Համերգներով հանդես է եկել ՀՍՍՀ տարբեր վայրերում և Մոսկվա, Թբիլիսի, Բաքու, Տաշքենդ, Աշխաբադ, Դոնի Ռոստով քաղաքներում: Երկացանկն են կազմել հայկ. ժող. և գուսանական երգեր, պարեղանակներ, արլ. մուղամներ, հայ կոմպոզիտորների գործիքային ստեղծագործություններ: Վերականգնել է Շիրակի բազմաթիվ մոռացված երգեր ու պարեղանակներ: Մ-ի կատարումը աչքի էր ընկնում բարձր վարպետությամբ: Մեծ ընդունելության են արժանացել «Հովվի կանչը», «Մաձկալ», «Որսկան ախպեր», «Դուն էն գլխեն» երգերի գործիքային մեկնաբանումները:

**ՄԱԴՈՅԱՆ** Հովհաննես Արշալույսի [ծն. 16(28).5.1911, ք. Ախալքալաք], հայ սովետական անասնաբույժ: Գյուղատնտ. գիտ. դ-ր (1973), պրոֆեսոր (1974): Ավարտել է Երևանի անասնաբուժական-անասնաբուծական ինստ-ը (1937): 1945—54-ին դասախոսել է նույն ինստ-ում: 1954-ից հայկ. գյուղատնտ. ինստ-ի անասնաբուծության ամբիոնի վարիչն է: Մ-ի գիտական աշխատանքները վերաբերում են ՀՍՍՀ տարբեր գոտիների խոտհարքներից ստացված խոտի քիմ. բաղադրության, մարսելիության, ընդհանուր սննդարարության, հորթերի նպատակադիր աճեցման և այլ հարցերին: Զբաղվում է նաև ՀՍՍՀ-ում գոմեշաբուծության զարգացման պրոբլեմով. ուսումնասիրել է բնաշխարհիկ գոմեշների կաթնատվության, աճի ու զարգացման, կերակրման, ցեղաբարելավման հարցերը ևն: Մ. կովկասյան գոմեշի ցեղի (հաստատված 1970-ին) հեղինակներից է:

**ՄԱԴՈՅԱՆ** Հովհաննես Հովսեփի [ծն. 7(20).10.1920, գ. Մեղրուտ, ՀՍՍՀ Գուգարքի շրջանում], հայ սովետական անասնաբույժ: Գյուղատնտ. գիտ. դ-ր (1974), պրոֆեսոր (1974): ՍՄԿԿ անդամ 1944-ից: Ավարտել է Երևանի անասնաբուժական-անասնաբուծական ինստ-ը (1942): 1962—1972-ին՝ ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրի տեղակալ, միաժամանակ հայկական անասնաբուծության և անասնաբուժության ԳՀԻ-ում բաժնի վարիչ: 1972—1978-ին՝ Երևանի անասնաբուժական-անասնաբուծական ինստ-ի ռեկտոր:

Մ-ի գիտահետազոտական աշխատանքները վերաբերում են գյուղատնտ. կենդանիների անպտղության դեմ պայքարի միջոցների մշակման, կերի մեջ էստրոգենների առկայության, վերարտադրության պրոցեսում դրանց նշանակության հարցերին:

Մ. առաջարկել է սենյակի ջերմաստիճանում (18—20°) խոյի սերմի պահպանման նոր եղանակ, որը լայնորեն կիրառվում է ՀՍՍՀ տնտեսություններում:

*Երկ.* Գյուղատնտեսական կենդանիների անպտղության վերացման ուղիները, Ե., 1966: Գյուղատնտեսական կենդանիների վերարտադրության մի քանի կարևորագույն հարցերի մասին, Ե., 1969:

**ՄԱԴՈՅԱՆ** Ղուկաս Կարապետի (1906, գ. Քերս, Կաղզվանի գավառ —11.6.1975, Երևան), Սովետական Միության հերոս (31.3.1943), փոխգնդապետ: ՍՄԿԿ անդամ 1925-ից: Ավարտել է Մ. Ֆրունզեի անվ. ռազմ. ակադեմիան (1944), ՀԿ(բ)Կ Կենտկոմին առընթեր երկամյա կուսակցական դպրոցը (1948): 1920—25-ին կամավոր ծառայել է կարմիր բանակում, մասնակցել Վրաստանի և Հայաստանի քաղաքացիական կռիվներին, 1941-ի սեպտեմբերից՝


Ղ. Կ. Մադոյան

Հայրենական մեծ պատերազմին, նախ որպես մոտո-հրաձգային վաշտի, գումարտակի, ապա՝ գնդի հրամանատար: Աչքի է ընկել Դոնբասի և Վոլգոգրադի պաշտպանական, Էլիստայի (Ստեպնոյ) ազատագրման մարտերում: Հերոսի կոչման արժանացել է 1943-ի փետրվարին Դոնի Ռոստովի ազատագրման ժամանակ իր գումարտակով քաղաքի երկաթուղային կայարանը գրավելու և այդ բնագիծը 6 օր պահելու համար: 1944-ի մայիսից մասնակցել է Լեհաստանի ազատագրմանը, ծանր վիրավորվել Դեմբիցա քաղաքի մատույցներում: Զորացրվելուց հետո (1945-ի հոկտեմբեր) եղել է Հայկ. ՍՍՀ առևտրի մինիստրի տեղակալ, Հայկ. ՍՍՀ սոցիալական ապահովության մինիստր (1951—1962): Պարգևատրվել է Լենինի, Կարմիր դրոշի, Հայրենական պատերազմի II աստիճանի շքանշաններով: Մ. Անդրիասովը իր «Վեց օր» (1947) վիպակում պատկերել է Մ-ի ղեկավարած գումարտակի սխրանքները Դոնի Ռոստովի ազատագրման ժամանակ:

*Գրկ.* Պ ո ր ս ա մ յ ա ն Վ. Ա., Սովետական Միության հերոս Ղուկաս Մադոյան, Ե., 1944:

*Ե. Խալեյան*

**ՄԱԴՐԱՍ**, նահանգ Հնդկաստանում, տես *Տամիլնադ*:

**ՄԱԴՐԱՍ**, քաղաք Հարավային Հնդկաստանում, Բենգալյան ծոցի ափին, Տամիլնադ նահանգի վարչական կենտրոնը: 2470 հզ. բն. (1971): Տրանսպորտային հանգույց է, արդ., առևտրաֆինանսական և մշակութային խոշոր կենտրոն: Հնդկաստանի ծովային գլխավոր նավահանգիստներից է, ունի օդանավակայան (Մինամբակկամ): Զարգացած է ընդհանուր մեքենաշինությունը և մետաղամշակումը, շաքարի, ցեմենտի արտադրությունը, նավթավերամշակությունը, քիմ., տեքստիլ արդյունաբերությունը, կաշվի, կոշիկի և ծխախոտի արտադրությունը: Մ-ի արվարձաններում՝ Պերամբուրում կա մետաղյա վագոնների արտադրություն, Ավադիում՝ տանկերի և զրահամեքենաների, Գինդիում՝ հեռատիպային ապարատների ձեռնարկություններ: Կան բազմաթիվ մանր տնայնագործական արհեստանոցներ: Ներմուծում է՝ մետաղներ, մեքենաներ ու սարքավորումներ, նավթ և նավթամթերքներ, հանքային պարարտանյութեր, հացահատիկ, անտառանյութ, արտահանում՝ երկաթի հանքաքար, կաշի, մորթի, գործվածքներ, սուրճ, ծխախոտ, գետնընկույզ: Ունի համալսարան (1857), ԳՀԻ-ներ, կինոստուդիա: Մ-ում է Հնդկաստանի աշխարհագրական ընկերությունը, Հարավային Հնդկաստանի աշխարհագրական ուսումնասիրությունների կենտրոնը: Հիմնադրվել է 1639-ին:

Մ. տարածված է առափնյա հարթության վրա: Հս. մասում, նավահանգստի կողքին, գործարար կենտրոնն է, նրանից արմ.՝ Պերամբուր արդ. շրջանը, նավահանգստից հվ.՝ նախկին անգլ. ամրոցը (այժմ՝ պատմության թանգարան): Ամրոցից հվ. և հվ-արմ. քաղաքի կենտրոնական մասն է՝ խանութների, հյուրանոցների, մենատների հիմնական շրջանը: Ծովափի երկարությամբ ձգված է Մարինա գեղեցիկ փողոցը:

Հ ա յ ե ր ը  Մ ա դ ր ա ս ու մ: Հարավ-Արևելյան Հնդկաստանում բնակություն հաստատած հայերը հիմնականում կենտրոնացած էին Մ-ում: Մադրասահայ համայնքը կազմավորվել է XVI դ.: 1547-ին կառուցվել է առաջին հայկ. եկեղեցին, 1772-ին՝ Ս. Աստվածածինը, որը գործում է ցայսօր: 1773-ին մադրասահայերը կազմել են համայնքային կանոնադրություն «Տետրակ, որ կոչի նշաւակ», ըստ որի համայնական ինքնավարության բարձրագույն մարմինը Մ-ի հայոց «բոլոր ժողովրդի» կամ «համահավասար ժողովրդոց» ընդհանուր ժողովն էր, գումարվում էր ամեն տարի և ընտրում էր գործադիր մարմին: Հայերը մասնակցել են նաև Մ-ի կառավարմանն ու բարեկարգմանը. ձեռագիր հիշատակարանում հիշվում է, որ անգլիացիների գալուց առաջ Չին Փաթաջի (այսինքն՝ Մ-ի) կառավարիչը եղել է հայազգի Ղոզազը: 1725—26-ին խոջա Պետրոս Ուսկանի ծախքով կառուցվել է Սարիար գետի բազմակամար կամուրջը և քաղաքի բարձունքը տանող քարե սանդուղքը (166 աստիճանով): Մադրասահայեր Շահամիր Շահամիրյանը, Մովսես Բաղրամյանը, Հարություն Շմավոնյանը մեծ դեր են խաղացել հայ ազատագրական գաղափարախոսության ձևավորման գործում (տես *Մադրասի խմբակ*): Մ-ում է լույս տեսել (1794-ին) հայ մամուլի առաջնեկը՝ «*Ազդարար*»: Տես նաև *Հնդկաստան*, Հ ա յ ե ր ը  Հ ն դ կ ա ս տ ա ն ու մ մասը:

**ՄԱԴՐԱՍԻ ԽՄԲԱԿ**, հայ գրական-քաղաքական կազմակերպություն: Ստեղծվել է 1770-ական թթ., Հնդկաստանի *Մադրաս* քաղաքում՝ որպես անմիջական արդյունք հայ ազգային-ազատագրական շարժման գործիչ Հովսեփ *Էմինի* քարոզչության: Արտահայտել է հայ առևտրական բուրժուազիայի և բուրժ. մտավորականության գաղափարախոսությունը: Մ. խ-ի ականավոր դեմքերից էին Մովսես *Բաղրամյանը*, Շահամիր *Շահամիրյանը*, Հակոբ Շահամիրյանը և այլք: Մ. խ-ի անդամների աշխարհայացքի վրա մեծապես ազդել են Օսմանյան կայսրության ու Պարսկաստանի բռնապետություններին ենթարկված Հայաստանի ծանր դրությունը, ազատագրությանը հասնելու հայերի ձգտումը, ինչպես նաև եվրոպական լուսավորականության գաղափարները: Մ. խ. հանդես է եկել ինքնակալության ու բռնակալության քննադատությամբ, զարգացրել սահմանադրական գաղափարներ, ձգտել ապագա ազատագրված Հայաստանում ստեղծել բուրժ. հանրապետություն (հակառակ դեպքում՝ գոնե սահմանադրական միապետություն), քարոզել ֆեոդալական կարգերի վերացում և հայկ. պետականության վերածնունդը կապել Ռուսաստանի օգնության հետ: Մ. խ-ում ստեղծվել են հայ քաղ. գրականության այնպիսի գլուխգործոցներ, ինչպիսիք են «*Նոր տետրակ, որ կոչի յորդորակ*», «*Որոգայթ փառաց*», «*Տետրակ, որ կոչի նշաւակ*» երկերը, ինչպես նաև 1780-ական թթ. ռուս. կառավարությանը ներկայացված «Հայ-ռուս դաշնակցային պայմանագրի» նախագիծը: Դրանցում նրանք քննադատել են Հայոց եկեղեցին, որն իր քարոզչությամբ և չարին չդիմադարձելու կոչով հայ ժողովրդին փաստորեն զրկել է դիմադրական կորովից: Դրել են լուսավորության տարածման և ազգային ինքնագիտակցության արթնացման հրատապ հարցը, փորձել ուրվագծել Հայաստանի ապագա պետ. կարգը և Ռուսաստանի հետ ունենալիք նրա փոխհարաբերությունների բնույթը: Մ. խ-ի լուսավորական և ազգային-ազատագրական գաղափարները շատ դեպքերում կրել են ուտոպիական բնույթ, քանի որ իրական հող չունեին ժամանակի հայ իրականության մեջ: *Վ. Դիլոյան*

**ՄԱԴՐԱՍԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՏՊԱԳՐՈՒԹՅՈՒՆ**, առաջին տպարանը հիմնադրել է Շահամիր *Շահամիրյանը*, 1772-ին: Տպարանի հիմնադրումը կապված է XVIII դ. 2-րդ կեսին հնդկահայ գաղութում ծնունդ առած հայ ազատագրական գաղափարախոսության հետ: Տպագրվել են՝ «Այբբենարան» (1772), Մովսես Բաղրամյանի «Նոր տետրակ, որ կոչի յորդորակ» (1772), Շահամիր Շահամիրյանի «Գիրք անուանեալ Որոգայթ փառաց» (1773, կարծիքներ կան, որ այդ գիրքը տպագրվել է 1787—89-ին), Մեսրոպ Երեցի «Պատմութիւն Մնացորդաց Հայոց և Վրաց» (1775), «Թարգմանութիւն նամակի շնորհաց և պահպանութեան ի տեառնէ Եկատերինա Դշխոյն Ռուսաց



Մադրասի հայկական տպագրության հրատարակություններից

առ ի Հայոցս» (1781), Հանունեի «Պատմագրութիւն վարուցն և գործոց Նադըր Շահ թագաւորին Պարսից» (1780, ըստ աղբյուրների՝ 1783), «Տետրակ, որ կոչի նշաւակ» (1783) գրքերը: Երկրորդ տպարանը հիմնադրել է շիրազցի Հարություն քահանա *Շմավոնյանը*, որը 1789—90-ին երկու աննշան գրքույկ հրատարակելուց հետո տպագրել է Թադեոս Սոզինյանցի «Տետրակ որ կոչի Ողբ Հայաստանեայց» (1791), Հովսեփ Արղության «Օրինակ հանդիսաւոր ծանուցման և ողբոց» (1792), Բաղդասար Դպիրի երկհատոր քերականությունը (1791), Հակոբ Ջուղայեցու «Գրքույկ երկրաչափական» (1792), Ներսես Շնորհալու «Գիրք որ կոչի Յիսուս Որդի» (1792), «Գիրք Պորփիրի որ կոչի Ներածութիւն» (1793), ֆրանսիացի բնագետներ Բյուֆոնի և Բոմարի «Համառօտ պատմութիւն մեղուաց» (1796), «Գիրք անուանեալ Ղեկաւար մանկանց» (1797), Դավիթ Անհաղթի «Գիրք Սահմանաց» (1797), հաջորդ դարի սկզբներին՝ «Փոքրիկ բառագիր» (1803), «Անցք կամ գործք քառասուն երեք, և քառասուն և չորս երրորդ ժողովոց Մադրասիս Հայոց» (1806), ֆրանսիացի գրող Մարմոնթելի «Բելիսարիոս» (1809) գրքերը: Սակայն Շմավոնյանի ամենամեծ երախտիքը և նրա տպարանի դարակազմիկ հրատարակությունը հայոց առաջին պարբերականն՝ «*Ազդարար*», եղավ (1794—96): XIX դ. սկզբներին Մադրասում գործել են ևս երկու հայկ. տպարան, որոնցից մեկը (գոյատևել է երեքչորս տարի) պատկանում էր Սարգիս Ծատուր Աղավելյանին: Այստեղ տպագրվել են «Նոր տետրակ այբուբենական» (1809), «Թանգարան բարեզարդ կամ Հաւաքումն զուարճալի և քաղցրալուր բարոյական պատմութեանց» (1809), Ներսես Շնորհալու «Ողբ Եդեսիայ քաղաքի» (1810), Հովհաննես Ջուղայեցու «Գիրք որ կոչի Սրբազնագործութիւն» (1812) գրքերը: Մադրասահայ գաղութի վերջին տպարանը Հակոբ և Հովսեփ Շամրյան եղբայրներինն է: Առայժմ հայտնի են այս տպարանի երկու կարևոր հրատարակությունները. ֆրանսիացի հեղինակ Ֆլորիանի «Նումայ Պոմպիլիոս» (1812) վեպը և Վոլտերի «Ողբերգութիւն ի վերայ մահուան Ցուլիոս

Կեսարու» (1818) երկը: Այնուհետև Մադրասը դադարում է հայ տպագրության և մշակույթի կենտրոն լինելուց՝ իր տեղը զիջելով Կալկաթային:

*Գրկ.* Զարբհանալյան Գ., Պատմություն հայկական տպագրության, Վնտ., 1895: Լևոնյան Գ., Հայ գիրքը և տպագրության արվեստը, Ե., 1958, էջ 156—159, 232:

*Հ. Դավթյան*

**ՄԱԴՐԻԳԱԼ** [ֆրանս. madrigal — երգ մայրենի լեզվով՝ ի տարբերություն լատ. օրհներգությունների), Վերածննդի դարաշրջանի աշխարհիկ երաժշտական-բանաստեղծական ժանր: Սկզբնավորվել է ժող. բանաստեղծությունից, իտալ. հին հովվական երգերից: XIV դ. Մ. ի հայտ է եկել իտալ. պրոֆեսիոնալ պոեզիայում որպես հովվերգական բնույթի (տես *Հովվերգություն*) երգվող բանաստեղծություն: Վաղ շրջանի Մ. պոլիֆոնիկ 2—3-ձայնանի քառյակային կառուցվածքի վոկալ-գործիքային ստեղծագործություն էր (կրկներգով), գլխավորապես՝ սիրային-քնարական, նաև կենցաղային, դիցաբանական և այլ բովանդակությամբ, XVI դ. 4—5-ձայնանի վոկալ պոեմ՝ առանց գործիքային նվագակցության: Մ-ի վարպետներ էին բանաստեղծներ Ֆ. Պետրարկան, Ջ. Բոկաչչոն, Տ. Տասսոն, կոմպոզիտորներ Ֆ. Լանդինոն, Օ. Լասսոն, Ջ. Պալեստրինան, Կ. Մոնտեվերդին: XVII—XVIII դդ. Մ. հաճոյախոսական-սիրային բանաստեղծություն էր, XVIII դ.—XIX դ. սկզբին՝ սալոնային-ալբոմային ոտանավոր: Հայ իրականության մեջ բովանդակության նմանությամբ Մ. կարելի է համարել Վ. Տերյանի «Կատվի դրախտ», Ե. Չարենցի «Էմալե պրոֆիլը Ձեր» շարքերը: XX դ. Մ. նորից ներգրավվել է կոմպոզիտորական (Պ. Հինդեմիթ, Ի. Ստրավինսկի, Բ. Մարտինու) և համերգային-կատարողական պրակտիկայի մեջ:

*Դ. Գասպարյան, Ս. Առաքելյան*

**ՄԱԴՐԻԴ** (Madrid), Իսպանիայի մայրաքաղաքը, երկրի քաղաքական, տնտեսական և մշակութային կենտրոնը: Մադրիդ նահանգի և Նոր Կաստիլիա պատմական մարզի գլխավոր քաղաքն է: Գտնվում է Պիրենեյան թերակղզու կենտրոնական մասում, Մեսետա սարավանդում (բարձրությունը՝ ավելի քան 650 *մ*), Մանսանարես գետի երկու ափին: Կլիման մերձարևադարձային է, միջերկրածովյան ցամաքային տիպի: Հունվարի միջին ջերմաստիճանը 4,9°C է, հուլիսինը՝ 24,2°C, տարեկան տեղումները՝ մոտ 440 *մմ*: Մեծ Մ. ընդարձակ քաղաք-ագլոմերացիա է (տարածությունը 1,2 հզ. *կմ²* է, այդ թվում բուն քաղաքը՝ 607 *կմ²*): Բաժանվում է 18 վարչական շրջանի: Բնակչությունը 3,6 մլն է (1979): Տնտեսապես ակտիվ բնակչության մոտ 40%-ը զբաղված է սպասարկման ոլորտում, 1/3-ը՝ արդյունաբերության մեջ:

**Պատմական տեղեկանք:** Մ. կազմավորվել է մավրիտանական Մաջիրիտ ամրոցի (առաջին անգամ հիշատակվում է 932-ին) շուրջը: 1083-ին քաղաքը արաբներից ետ է նվաճվել, և, *Ռեկոնկիստայի* բնակիչների ակտիվ մասնակցության համար, 1118-ին նրան շնորհվել են քաղաքային արտոնություններ: XIV—XV դդ. Մ.







1 Դուքս Ալբայի թանգարանը (Լիրիա պալատ)
2 Մադրիդի մունիցիպալ թանգարանը
3 Ռոմանտիկական թանգարանը
4 Սեռալբո թանգարանը
5 Արդարադատության պալատը
6 Մ. Գերերոյի ազգային թանգարանը
7 Ազգային գրադարանը, ազգային հնագիտական թանգարանը
8 Սան Անտոնիո դե լոս Ալեմանես եկեղեցին
9 Իսպանական ժողովրդի թանգարանը
10 Լա Էնկառնասիոն եկեղեցին
11 Ազգային պալատը (նախկին թագավորական պալատ)
12 «Արմերիա»
13 «Ռեալ» թատրոնը
14 «Լարա» թատրոնը
15 Սան Խինես եկեղեցին
16 «Սան Ֆեռնանդո» գեղեցիկ արվեստների թագավորական ակադեմիան
17 Ծովային թանգարանը
18 Դեկորատիվ արվեստի ազգային թանգարանը
19 «Էսլավա» թատրոնը
20 Նուեստրա Սենյորա դե լա Ալմուդենա տաճարը
21 Պլասա Պուերտա դել Սոլ
22 Իսպանական կորտեսների պալատը
23 Այունտամիենտո (Ռատուշա)
24 Իսպանական բանկը (Բանկո դե Էսպանյա)
25 Իսպանական թագավորական ակադեմիան
26 «Սարսուելա» թատրոնը
27 Պրադո թանգարանը
28 Օսպիսիո պրովինսյալ (հոսպիտալ)
29 «Էսպանիոլ» թատրոնը
30 Սան Իսիդրո էլ Ռեալ եկեղեցին
31 Սան Ֆրանսիսկո էլ Գրանդե եկեղեցին
32 Աստղադիտարանը
33 Պլասա դե Տորոս Գլխավոր մրցասպարեզը
34 Բնական գիտությունների ազգային թանգարանը
35 Պարկե դել Օեստե
36 Կենդանաբանական այգին
37 Սան Անտոնիո դե լա Ֆլորիդա եկեղեցին
38 Ավիացիայի մինիստրությունը

Կաստիլիայի թագավորների աթոռանիստըն էր և *կորտեսների* նիստերի վայրը: 1383-ին Կաստիլիայի թագավորը հրովարտակով Մ. (Վիլյարեալե և Անդուխար քաղաքների հետ) պարգևել է *Լևոն Զ* Լուսինյանին՝ մինչև նրա մահը: 1520-ին մադրիդցիները մասնակցել են Կաստիլիայի ինքնավար քաղաքների ապստամբությանը (տես *Կոմունեռոս*): 1561-ին Ֆիլիպ II թագավորը Մ. դարձրել է մայրաքաղաք: Քաղաքը սկսել է արագ աճել՝ վերածվելով երկրի առևտրա-արդյունաբերական կենտրոնի: 1808-ի մարտին Մ. գրավել են ֆրանսիացիները: 1808-ի մայիսի 2-ին Մ-ում բռնկել է ապստամբություն, որը սկզբնավորել է 1808—14-ի իսպանական հեղափոխությունը: Մ. կենտրոնն էր նաև XIX դ. իսպանական մյուս հեղափոխությունների: 1868-ին Մ-ում ստեղծվել է I Ինտերնացիոնալի իսպանական խումբը. 1920-ին այստեղ հիմնվել է իսպանական կոմկուսը: 1936—39-ի Ազգային-հեղափոխական պատերազմի ժամանակ (տես *Իսպանական հեղափոխություն 1931—1939*) Մ.հանրապետական ուժերի կարևորագույն պատվարն էր: 1936-ի նոյեմբերին ֆաշիստական խռովարարները ընդհուպ մոտեցել են Մ-ին. քաղաքի հերոսական պաշտպանությունը, որը տևել է մինչև 1939-ի մարտի 28-ը, Իսպանիայում քաղաքացիական պատերազմի պատմության վառ էջերից է: 1960—70-ական թթ. Մ-ում տեղի են ունեցել բանվորների, ուսանողների, առաջադեմ մտավորականության բազմաթիվ ելույթներ ընդդեմ ֆրանկոյական բռնության:

**Տնտեսությունը**: Մինչև XIX դ. կեսը Մ, հիմնականում վարչա-քաղաքական կենտրոն էր: Ներկայիս Մ. առևտրաֆինանսական և արդ. կենտրոն է, տրանսպորտային հանգույց: Գլխավոր օդանավակայանը Բարախասն է: Մ-ի շրջանին բաժին է ընկնում երկրի արդ. արտադրանքի ընդհանուր արժեքի մոտ 10%-ը: Զարգացած է տրանսպորտային մեքենաշինությունը, էլեկտրատեխնիկական, պոլիգրաֆ, կաշվի, կարի, սննդի արդյունաբերությունը, տրիկոտաժի, մետաքսե և բրդե գործվածքների, պլաստմասսայե, ճենապակե և հախճապակե իրերի, օծանելիքի, գոբելենների, ինչպես նաև գեղարվեստական հին արհեստների առարկաների(ժանյակներ, հովհարներ, կաստանիետներ, ոսկերչական իրեր) արտադրությունը: Մ-ում են կենտրոնացած մոնոպոլիստական առաջատար միավորումների գլխավոր վարչությունները, բանկերը, ապահովագրական ընկերությունները, ֆոնդային գլխավոր բորսան, առևտրական ֆիրմաները: Մ. տուրիզմի միջազգային կենտրոն է:

**Ճարտարապետությունը**: Մ-ի ճառագայթաձև հատակագծով կենտրոնը ընկած է Պլասա Պուերտա դել Սոլ, Պլասա Մայոր և Պլասա դե Էսպանիա հրապարակների միջև: XVII—XIX դդ. կառուցվել են Թագավորական պալատը (1738—64, այժմ՝ Ազգային պալատ). ռատուշան (XVII—XVIII դդ.), Սան Ֆրանսիսկո էլ Գրանդե (1776—85), Սան Անտոնիո դե լա Ֆլորիդա (1792—98) եկեղեցիները, Տոլեդոյի կամուրջը, Պրադո թանգարանը



Մ ա դ ր ի դ. Սերվանտեսի հուշարձանը (1927, քանդակագործ՝ Կ. Վալերա, ճարտ. Պ. Մուգուրուսա) Պլասա դե Էսպանիա հրապարակում



Մ ա դ ր ի դ. Պլասա Պուերտա դել Սոլ հրապարակը

(1785—1830) են: 1860—69-ի նախագծով Մ. կառուցապատվել է հատակագծման ուղղանկյուն ցանցի համակարգով: 1894-ից Մ-ին կից կառուցվել է Եվրոպայում առաջին ժապավենային քաղաքը (40 *կմ* երկարությամբ, այժմ՝ Մ-ի տարածքում): Մ-ի XIX դ.—XX դ. սկզբի ճարտարապետությանը (պալատներ, թանգարաններ են) բնորոշ են էկլեկտիզմն ու «մոդեռնը»: 1930-ական թթ. կառուցվել է քաղաքի կենտրոնը կազմակերպող Գրան վիա պողոտան: Ըստ 1950-ական թթ. մշակված նոր գլխավոր հատակագծի (ճարտ. Խ. Լ. Սերտ) քաղաքի բնակելի շինարարությունը զարգանում է հիմնականում դեպի հս., արլ. և հվ-արլ.: Ժամանակակից Մ-ին բնորոշ են ընդարձակ պուրակները (ընդհանուր տարածքի մոտ 1/3-ը), հրապարակները, լայնահուն պողոտաները, երկնաքերները: 1962-ից կառուցվում են քաղաքարբանյակներ (Էսկորիալ, Էլ Պարդո են):

**Ուսումնական հաստատությունները, գիտական և կուլտուրական հիմնարկները**: Մ-ում են գտնվում Մադրիդի (հիմն. 1836) Կաթոլիկական, Մ-ի ինքնավար համալսարանները, Մարիա Քրիստինայի թագավորական կոլեգիումը, կոնսերվատորիան, Դրամատիկ արվեստի դպրոցը են ուս.հաստատություններ, Իսպանական թագավորական ակադեմիան, պատմության, գեղեցիկ արվեստների «Սան-Ֆերնանդո», ճշգրիտ, ֆիզիկական և բնական գիտությունների, բարոյական և քաղաքական գիտությունների, բժշկական ազգային թագավորական ակադեմիաները են, աստղադիտարանը, բուսաբանական այգին: Խոշորագույն գրադարաններն են՝ Ազգային (ավելի քան 2 մլն գիրք), Մադրիդի համալսարանի, Թագավորական պալատի (այժմ՝ Ազգային պալատ) են: Գործում են Պրադո, Ազգային հնագիտական, Բնական գիտությունների ազգային, «Արմերիա», Ծովային, Նոր արվեստի, Ժամանակակից արվեստի, Իսպանական ժողովրդի, Մարդաբանության և ազգագրության, Ռոմանտիկական, Դեկորատիվ արվեստի ազգային, Սերրալբոյի, Հերցոգ Ալբայի են թանգարանները:

Մ-ի երաժշտական թատրոններից են՝ «Ռեալ», «Սարսուելա», «Տեատրո լիրիկո», դրամատիկական թատրոններից՝ Մ. Գերբերոյի ազգային, «Էսպանյոլ», «Լարա», «Կոմեդիայի թատրոն», «Էսլավա», «Բելյաս արտես», «Կալդերոն», «Բենավենտե», «Ինֆանտա Իսաբել», «Վալիե Ինկլան» են: Գործում են Ազգային և Մ-ի կամերային նվագախմբերը, իսպանական ազգային ֆիլմադարանը:

**ՄԱԶԱԳԼՈՒԽ** (Trichocephalus trichiurus), մակաբույծ կլոր որդ: Մարմինը սպիտակավուն է, երբեմն կարմրավուն, առջևի (գլխային) մասը խիստ բարակ է, մազանման (այստեղից՝ Մ. անվանումը), ետին (պոչային) մասը հաստ է, արուների մոտ՝ պարուրաձև ոլորված: Արուների երկարությունը 30—40 *մմ* է, էգերինը՝ 35—50 *մմ*: Մազանման մասում գտնվում է կերակրափողը, հաստում՝ աղիքները և սեռական օրգանները: Բազմանում է ձվադրությամբ: Մակաբուծում է մարդու կույր աղիքում (հազվադեպ՝ որդանման ելունում, հաստ կամ ուղիղ աղիքում): Զարգանում է առանց միջնորդ տիրոջ, առաջացնում է տրիխոցեֆալոզ հիվանդությունը:

**ՄԱԶԱԶ**, Գ ա ռ ն ո յ  գ ա ւ ա ռ, Գ ա ռ ն ո յ  ձ ո ր, գավառ Մեծ Հայքի Այրարատ նահանգում, Երասխի Ազատ (Գառնի) վտակի վերին ավազանում: Ընդգրկել է այժմյան Աբովյանի շրջանի արլ. մասը, հիմնականում՝ Գառնի բերդաքաղաքի և Գեղարդավանքի (Այրիվանք) շրջակայքը: Մակերևույթը լեռնային է, անտառապատ, աղբյուրներով հարուստ: Մինչև V դ. կազմել է Ոստան գավառի բաղկացուցիչ մասը և մտել արքունի կալվածների մեջ: XIII դ. սկզբին սելջուկ թուրքերից ազատագրված Մ. և նրա հոգևոր կենտրոն Գեղարդավանքը Զաքարյանները տվել են Խաղբակյան կամ Պռոշյան իշխանական տոհմին: Ենթադրվում է, որ «Մազազ» անունը առաջացել է գավառում իշխող Մազազնունիք տոհմանունից: Զորանամակում Մազազնունյաց իշխանի զորաբաժինը հիշատակված է 500 հեծյալ այր:

Մ-ի կարևոր հուշարձաններն են՝ Գառնու տաճարը (Սարաւոյթն Տրդատայ) և Գեղարդավանքը՝ Գառնո ձորում, Հավուց թառ և Աղջոց վանքերը՝ Քեղո ձորում: Միջնադարյան գրավոր աղբյուրներում հիշատակվում են Մ-ի Ավանձաար, Ավանիկ, Արդիզ, Բերդկանց, Գառնի, Գողթ (Կոխդ), Թառնիս, Կակաղ, Կուտիս (Կուտուց վանքով), Մանկուս, Պորտիկ (Պորտկան), Քաղբերդ բնակավայրերը:

*Գրկ.* Ա լ ի շ ա ն Ղ., Այրարատ, Վնտ., 1890: Հ ա կ ո բ յ ա ն Թ.Խ., Հայաստանի պատմական աշխարհագրություն, Ե., 1968:

*Թ. Հակոբյան*

**ՄԱԶԱԿԱՆ ԵՐԵՎՈՒՅԹՆԵՐ**, կ ա պ ի լ յ ա ր  ե ր և ո ւ յ թ ն ե ր, միմյանց չխառնվող հավասարակշռվող միջավայրերի բաժանման սահմանում (մակերևութային շերտերում) մոլեկուլային ուժերի գործողությամբ պայմանավորված *մակերե-*

*մութային երևույթներ*: Մ. ե-ին են վերաբերում հեղուկի ազատ մակերևույթի, ինչպես նաև ուրիշ հեղուկի, գազի կամ սեփական գոլորշու հետ հեղուկի ունեցած սահմանի հավասարակշռության և շարժման վրա *մակերևութային լարվածության* ազդեցությամբ առաջացող երևույթները: Պարզագույն դեպքում, երբ արտաքին ուժերը բացակայում են կամ համակշռված են, հեղուկի մակերևույթը միշտ կորացած է. օրինակ, անկշռության պայմաններում հեղուկի կաթիլներն ընդունում են գնդի ձև: Հեղուկի կոր մակերևույթի շոշափողի ուղղությամբ ազդող մակերևութային լարվածության ուժերն ունեն դեպի հպվող ֆազերից մեկի ծավալի ներսն ուղղված բաղադրիչներ, որոնք հեղուկի մեջ ստեղծում են լրացուցիչ մ ա զ ա կ ա ն ճ ն շ ու մ՝ $\Delta p$: Վերջինս մակերևույթի $r$ միջին կորության հետ կապված է Լապլասի հավասարումով՝ $\Delta p = p_1 - p_2 = 2\sigma_{12}/r$, որտեղ $\sigma_{12}$-ը մակերևութային լարվածությունն է երկու միջավայրերի սահմանում, $p_1$-ը և $p_2$-ը ճնշումներն են $l$ հեղուկում և դրան հպվող 2 միջավայրում (ֆազում): Գոգավոր մակերևույթի դեպքում ($r<0$) ճնշումը հեղուկի մեջ ավելի ցածր է, քան հարևան ֆազում. $p_1<p_2$, և $\Delta p<0$: Ուռուցիկ մակերևույթի ($r>0$) դեպքում $\Delta p$-ի նշանը փոխվում է: Բազմաթիվ մանր կաթիլներից կամ պղպջակներից բաղկացած համակարգերի (էմուլսիա, հեղուկ աերոզոլ, հեղուկի կաթիլներ գոլորշու կոնդենսացման ժամանակ ևն) հատկությունները ու գոյացման պայմանները շատ դեպքերում պայմանավորված են Մ. ե-ով: Պինդ մարմնին հպվող հեղուկի մակերևույթի ձևի վրա էապես ազդում է *թրջման* երևույթը: Պինդ մարմնի և հեղուկի մոլեկուլների միջև գործող ձգողության ուժերը ստիպում են հեղուկին բարձրանալ մազանոթի պատերով, որը հանգեցնում է *մենիսկի* առաջացման: Մազական ճնշման և հեղուկի $h$ բարձրությամբ սյան հիդրոստատիկ ճնշման հավասարակշռության պայմանից հետևում է մազական բարձրացման օրենքը՝ Ժյուրենի (J. Jurin, 1864—1750) օրենքը. $h = 2\sigma_{12}/r(\rho_1-\rho_2)g$, որտեղ $\rho_1$-ը և $\rho_2$-ը հեղուկի և իր գոլորշու խտություններն են, $g$-ն ծանրության ուժի արագացումն է: $rh = 2\sigma_{12}/(\rho_1-\rho_2)g = a^2$ արտադրյալը տվյալ հեղուկ-գոլորշի կամ հեղուկ $1$—հեղուկ 2 բաժանման մակերևույթի ֆիզիկաքիմիական հաստատունն է, որը կախված չէ խողովակի ձևից, չափերից ու նյութից: Երկարության քառակուսու չափայնություն ունեցող այս մեծությունը կոչվում է մ ա զ ա կ ա ն հ ա ս տ ա տ ու ն: Ջրի համար $t=20°C$ դեպքում (սեփական գոլորշու հետ բաժանման սահմանում) $\sigma = 72{,}75$ *էրգ/սմ²*, $a^2 = 14{,}9$ *սմ²*: Մազական ներծծումը էական դեր է խաղում բույսերի ջրամատակարարման, հողերում և ծակոտկեն մարմիններում խոնավության պահպանման համար. այն լայնորեն կիրառվում է քիմ. տեխնոլոգիայում՝ զանազան նյութեր հեղուկով տոգորելու ժամանակ: Մ. ե. որոշում են շարժվող հեղուկ մակերևույթների ձևերի գոյացման պայմանները, օրինակ, մազական ալիքների առաջացումն ու տարածումը: Մ. ե. հայտնաբերել և հետազոտել են Լեոնարդո դա Վինչին, Բ. Պասկալը և Ժյուրենը, իսկ տեսությունը մշակել են Պ. Լապլասը, Թ. Յունգը, Ս. Պուասոնը, Ջ. Գիբսը, Ի. Ս. Գրոմեկան:

Գրկ. Громека И. С., Собр. соч., М., 1952; Адамсон А., Физическая химия поверхностей, пер. с англ., М., 1979.

Հ. Ֆարշյան

**ՄԱԶԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒՆ**, ֆիզիկաքիմիական հաստատուն, որը գործածվում է *մազական երևույթները* ձևակերպող օրենքներում և առնչություններում:

**ՄԱԶԱԿԱՆ ՋՈՒՐ**, *ստորերկրյա ջրերի* տեսակ, որոնք պահվում են ապարների ծակոտիններում և ճեղքերում (լայնությունը՝ 2—2,5 *մմ*) *մակերևութային լարվածության* ուժերով:

**ՄԱԶԱՀԱՆՈՒՄ**, էպիլացիա, մազերի արհեստական հեռացումը կոսմետիկական կամ բուժիչ նպատակով: Կատարվում է մեխանիկական գործիքների, էլեկտրամազահանման, էպիլինային սպեղանու և ռենտգենյան ճառագայթների օգնությամբ: Էլեկտրամազահանումը կիրառվում է կանանց դեմքի գերմազոտությունը (տես *Հիպերտրիխոզ*) վերացնելու, իսկ ռենտգենյան ու էպիլինային Մ.՝ գլխի և դեմքի սնկային որոշ հիվանդությունների (տրիխոֆիթիա, միկրոսպորիա, ֆավուս, սիկոզ) բուժմանն օժանդակելու նպատակով: Ամենից կայուն արդյունք տալիս է էլեկտրամազահանման մեթոդը, որի ժամանակ ասեղնաձև էլեկտրոդներով քայքայում են մազային կոճղեզները, և մազերի աճը դադարում է:

**ՄԱԶԱՆՈԹՆԵՐ**, կենդանիների և մարդու բոլոր հյուսվածքներով անցնող ա ր յ ու ն ա տ ա ր մանրագույն անոթներ. ցանց են առաջացնում հյուսվածքները արյունով մատակարարող զարկերակիկների և արյունը հեռացնող երակիկների միջև: Մ-ի պատերով տեղի է ունենում գազերի ու այլ նյութերի փոխանակություն արյան և հյուսվածքների միջև: Մ-ի պատերը բաղկացած են 3 շերտից. ներքին՝ է ն դ ո թ ե լ ա յ ի ն, միջին՝ հ ի մ ն ա յ ի ն (բազալ), և արտաքին՝ ա դ վ ե ն տ ի ց ի ա լ: Էնդոթելային շերտի բջիջներում կան փոխանակվող նյութերը փոխադրող միկրոպինոցիտոզային վեզիկուլներ: Զարկերակային և երակային Մ. տարբերվում են իրարից. օրինակ՝ զարկերակային Մ-ի տրամագիծը մինչև 7 *մկմ* է, էնդոթելային շերտը հարթ է և հզոր, մինչդեռ երակային Մ-ի տրամագիծը սովորաբար 7—12 *մկմ* է, էնդոթելային շերտը բարակ է՝ ծածկված ցիտոպլազմային ելուստներով ևն: Տարբերվում են նաև տարբեր օրգանների Մ., օրինակ՝ մկանային Մ-ի էնդոթելային շերտը հաստ է, հիմնայինը՝ բարակ, ոսկրածուծի Մ. հիմնային շերտ չունեն, լյարդի և փայծաղի Մ. ծակոտկեն են ևն: Ա վ շ ա յ ի ն Մ., ի տարբերություն արյունատար Մ-ի, բաղկացած են միայն էնդոթելային շերտից. թափանցում են համարյա բոլոր օրգանները, դրանցով հյուսվածքներից դուրս են բերվում արյունատար Մ. չթափանցող սպիտակուցների կոլոիդային լուծույթները, օտար մասնիկները և բակտերիաները: Ավիշը միջբջջային ճեղքերից հավաքվում է ավշային Մ-ում, որոնք միանալով կազմում են ավշային անոթներ: Տես *Ավշային համակարգ*:

**ՄԱԶԱՉՉՈ** [Masaccio, իսկականը՝ Թ ո մ մ ա զ ո դ ի Ջ ո վ ա ն ն ի դ ի Ս ի մ ո ն ե Կ ա ս ս ա ի (Գվիդի), 21.12.1401, Սան Ջովաննի-Վալդառնո, Տոսկանա — 1428, Հռոմ], իտալացի նկարիչ: Ֆլորենտական քվատրոչենտոյի խոշորագույն ներկայացուցիչ Մ. հաղթահարել է գոթական ոճի ավանդույթները, կրոնական պատկերներում մարմնավորել մարդկային կատարյալ անհատականության հումանիստական նկարագիրը: 1422-ից ապրել է Ֆլորենցիայում, աշխատել է նաև Պիզայում և Հռոմում: Հաճախ համագործակցել է Մազոլինո դա Պանիկալեի հետ: Մ-ի վաղ շրջանի գործերը («Տիրամայրը և Ս. Աննան», աշխատել է Մազոլինոյի հետ, մոտ 1424, Ուֆֆիցի պատկերասրահ, Ֆլորենցիա) առանձնանում են լուսաստվերային ընդգծված կերպավորմամբ, մարմինների եռաչափությամբ, ընդհանրացված ձևերի մոնումենտալությամբ: 1425-ի և 1428-ի միջև Ֆլորենցիայի Սանտա Մարիա դել Կարմինե եկեղեցու Բրանկաչչի կապելլայում ստեղծել է որմնանկարներ («Դրախտից արտաքսումը», «Տաճարի տուրքի վճարումը» ևն), ներշնչվել *Ջոտտոյի* արվեստով, իր կապերը խզել միջնադարի գեղարվեստական մշակույթի հետ: «Ս. Երրորդություն»-ում (մոտ 1426—1427, Սանտա Մարիա Նովելլա եկեղեցի, Ֆլորենցիա) Մ., հավանաբար Ֆ. *Բրունելլեսկիի* հեռանկարչության ազդեցությամբ, որմնանկարչության մեջ առաջին անգամ ստեղծել է մարդու մասշտաբներին համապատասխան կենտրոնա-հեռանկարային կոմպոզիցիա: Մ-ի խստաշունչ և առնական արվեստը մեծ ազդեցություն է ունեցել Վերածննդի գեղարվեստական մշակույթի, մասնավորապես *Պիեռո դելլա Ֆրանչեսկայի* և *Միքելանջելոյի* ստեղծագործությունների վրա:

Պատկերազարդումը տես 128-րդ էջից հետո՝ ներդիրում:

Գրկ. Романов Н. И., Мазаччо, «Уч. зап. МГУ», в. 126: Труды кафедры общего искусствознания, кн. 1, М., 1947.

**ՄԱԶԱՐԻ ՇԱՐԻՖ**, քաղաք Աֆղանստանի հյուսիսում, Բալխի օազիսում: Բալխ պրովինցիայի վարչական կենտրոնն է, առևտրա-տրանսպորտային կայան Բակտրիական հարթավայրում: Բնակչությունը՝ 44,5 հզ. (1970): Կան բամբակազտիչ և յուղիհան գործարաններ, գորգագործություն, մետաղամշակություն: ՍՍՀՄ համագործակցությամբ կառուցվել են ազոտային պարարտանյութերի գործարան և ՋԷԿ: Ըստ մահմեդական ավանդության Մ. Շ-ում *Ալի* խալիֆայի գերեզմանն է: XV դարում այստեղ կառուցվել է դամբարան՝ մազար, որը դարձել է շիաների սրբավայրը (արաբերեն՝ մազարի շարիֆ՝ աստվածային դամբարան, այստեղից էլ՝ քաղաքի անունը):

**ՄԱԶԱՐԻՆԻ** Ջուլիո (1602—1661), ֆրանսիական պետական գործիչ: Սիցիլիացի ազնվականի որդի: 1630-ից դիվանագիտական ծառայության է անցել Հռոմի պապի մոտ, 1640-ից՝ Ֆրանսիայում: 1641-ից՝ կարդինալ, 1643-ից՝ Ֆրանսիայի առաջին մինիստր: Շարունակել է (*Ռիշել-*

*յեից* հետո) ֆրանս. բացարձակապետության ամրապնդման քաղաքականությունը. 1643-ին ճնշել է ֆեոդալական ավագանու դավադրությունը, ինչպես նաև անհամար ժող. ապստամբություններ: 1648-ին գլխավորել է *Ֆրոնդայի* դեմ պայքարը: Փարիզյան պառլամենտը Մ-ին հայտարարել է պետության թշնամի. 1651 և 1652-ին ստիպված հեռացել է Ֆրանսիայից, վերադարձել է 1653-ին, Ֆրոնդայի ճնշումից հետո: Լինելով հմուտ դիվանագետ՝ Մ. մեծ հաջողությունների է հասել արտաքին քաղաքականության մեջ (տես *Վեստֆալյան հաշտություն 1648* ևն), հաստատել Ֆրանսիայի գերակայությունը Եվրոպայում:

**ՄԱՋԱՐՈՎԻՉ** Ալեքսանդր Նիկոլաևիչ (1886—1950), սովետական երկրաբան և հիդրոերկրաբան: Ավարտել է Մոսկվայի համալսարանը (1912): 1931-ից՝ պրոֆեսոր, իսկ 1932-ից ղեկավարել է երկրաբանության, պատմական երկրաբանության, 1949-ից՝ պատմական և ռեգիոնալ երկրաբանության ամբիոնները նույն համալսարանում: Մշակել է վերին պերմի կարմրավուն նստվածքների շերտագրության ընդհանուր սխեման: Ճշտել է Պովոլժիեի և Զավոլժիեի յուրայի, կավճի, նեոգենի հասակի ապարների շերտագրական սահմանները և ուսումնասիրել նրանց ֆացիալ փոփոխությունները:

**ՄԱԶԴԱԿՅԱՆ ՇԱՐԺՈՒՄ**, գյուղացիության և քաղաքային չքավորության շարժում Սասանյան Իրանում V դ. վերջին —VI դ. 20-ական թթ.: Առաջացել է ազնվականության և զրադաշտական հոգևորականության ազդեցության ուժեղացման, կենտրոնական իշխանության թուլացման, արտաքին քաղաքականության անհաջողությունների և երկրում տարածված սովի հետևանքով: Շարժման ղեկավարը և գաղափարախոսը քուրմ Մազդակն էր: Մ. շ-ման գաղափարախոսության՝ մազդակիզմի հիմքը զրադաշտական դավանանքի (տես *Զրադաշտականություն*) չարի և բարու անընդհատ պայքարի դրույթն էր: Նյութական փոխօգնության մասին Զրադաշտի պատվիրանը մազդակիզմը դիտում էր զույքային ընդհանրության և հավասարության գաղափարի մեջ: Մազդակը կոչ էր անում սոցիալական անհավասարությունը վերացնել բռնի ուժով: Ազնվականության և հոգևորականության ազդեցությունը թուլացնելու նպատակով շահ *Կավադ I* (488—496) հարեց Մ. շ-մանը: 496-ին ազնվականությունը գահընկեց արեց Կավադ I-ին: 499-ին վերագրավելով գահը, Կավադ I Մ. շ-ման մասնակիցներին տվեց պետ. պաշտոններ, Մազդակը դարձավ մոգպետ: Մազդակյանները սկսեցին իրագործել գույքային հավասարության գաղափարը: Վախենալով Մ. շ-ման ուժեղացումից՝ Կավադ I մերձեցավ թուլացած ազնվականությանը և սկսեց հալածել Մ. շ-ման մասնակիցներին: VI դ. 20-ական թթ. Կավադ I-ի որդի *Խոսրով I Անուշիրվանը* ճնշեց Մ. շ.: *Ն. Արդումանյան*

**ՄԱԶԴԵԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, Մարաստանում (IX—VI դդ. մ. թ. ա.) և Աքեմենյան Իրանում (VI—IV դդ. մ. թ. ա.) տիրապետող կրոնը: Մ-յան դավանաբանական հիմքը գերագույն աստված Մազդայի (*Ահուրամազդա*) և կրակի պաշտամունքն է: Մազդան, որը պայքարում է չար աստված Անգրա Մանյուի (*Ահրիման*) դեմ, համարվել է թագավորական իշխանության հովանավորը: Մ-յան մեջ, մինչև V դ. մ. թ. ա., պաշտվել են նաև տեղական ցեղային աստվածները (դևերը): Քսերքսես I կենտրոնացրել է պաշտամունքը և արգելել դևերի երկրպագությունը: Սակայն, հետագայում ևս, Մազդայի հետ մեկտեղ հիշատակվում են Անահիտ և Միթրա աստվածությունները: Հին Մ-յան որոշ գաղափարներ և ծեսեր վերաիմաստավորված ձևով ներառել է *զրադաշտականությունը*:

**ՄԱԶԴԵՂ**, հայկական հեթանոսական տոմարի ամիսների 6-րդ օրվա անունը:

**ՄԱԶԵԽ**, կաթնամսաբրդատու կոպտաբուրդ ոչխարների հնագույն ցեղ: Ստեղծվել է Հայաստանում ժող. սելեկցիայի միջոցով: Տեղական ոչխարներից ամենախոշորն է. մաքիների կենդանի միջին զանգվածը մոտ 53, իսկ խոյերինը 85—90 *կգ* է: Տարեկան միջին բրդատվությունը 1,3—1,5 *կգ* է: Բուրդը զունավոր է և ցածրորակ. ունի քստամազի ու մեռած մազի բարձր տոկոս: Պտղատվությունը ցածր է, զույգ ծնող մաքիների թիվը՝ 3—5%: Տարածված է գերազանցապես ՀՍՍՀ-ում՝ Կամոյի, Վարդենիսի, Սևանի, Մարտունու, Աբովյանի, Թալինի, Ախուրյանի և Ղուկասյանի շրջաններում: Մաքուր վիճակում չի բուծվում: Բրդատվությունն ու բրդի որակը բարելավելու նպատակով 1937-ից տրամախաչվում է նրբագեղմ տարբեր ցեղերով: Երևանի անասնաբուծական-անասնաբուժական ինստ-ի մանր եղջերավոր անասնապահության ամբիոնի աշխատակիցներն Աբովյանի շրջանում Մ-ի նրբագեղմ խառնացեղերի և կիսանրբագեղմ ցեղերի տրամախաչումից ստացել են «Հայկական կորիդել» տիպը, որն ունի մսատվության լավագույն հատկանիշներ և բարձր բրդատվություն (մաքիների միջին բրդատվությունը մոտ 4,5 *կգ* է): *Մ. Քարամյան*

**ՄԱԶԵՊԱ** Իվան Ստեպանովիչ (1644—1709), Ձախափնյա Ուկրաինայի հետման (1687—1708): Խոշոր հողատեր: Տարվելով Ուկրաինայի ինքնուրույնության և այն Ռուսաստանից անջատելու ազգայնական գաղափարներով, Մ. գաղտնի բանակցել է լեհ թագավոր Ստանիսլավ Լեշչինսկու, ապա՝ շվեդ. թագավոր Կարլ XII-ի հետ: 1708-ին անցել է Կարլ XII-ի կողմը (տես *Հյուսիսային պատերազմ 1700—1721*): 1709-ին, Պոլտավայի ճակատամարտում շվեդների պարտությունից հետո, Կարլ XII-ի հետ փախել է թուրք. Բենդերի ամրոցը, որտեղ և մահացել է:

**«ՄԱԶԵՐ»**, ռադիոհաճախականությունների տիրույթում ստիպողական առաքման սկզբունքով աշխատող կոհերենտ ճառագայթման աղբյուր կամ ուժեղացուցիչ: «Մազեր» բառը կազմված է անգլերեն «Microwave Amplification by Stimulated Emission of Radiation» (միկրոալիքների ուժեղացում ստիպողական ճառագայթման միջոցով) արտահայտության բառերի սկզբնատառերից: Մ-ում որպես բանող նյութ օգտագործվում են ատոմային և մոլեկուլային փնջեր կամ բյուրեղներ: Ջրածնի կամ ցեզիումի ատոմների փնջով աշխատող Մ-ի ստիպողական ճառագայթումը տեղի է ունենում գերնուրբ կառուցվածքի ենթամակարդակների միջև անցումների ժամանակ: Ցեզիումի Մ. հնարավորություն է տալիս հաճախականության կայունությունը հասցնել մինչև $\Delta\nu/\nu \approx 10^{-13}$-ի: Այդ Մ-ի ճառագայթման ալիքի պարբերությունը 1967-ին ընդունվել է իբրև ժամանակի էտալոն: Սուտակե Մ-ի ստիպողական անցումները տեղի են ունենում $Cr^{+++}$ իոնների՝ արտաքին մագնիսական դաշտի ազդեցությամբ ճեղքված ենթամակարդակների միջև: Սուտակե Մ. կարող է ուժեղացնել մի քանի *սմ* երկարության ալիքներ: Տարածում է գտել նաև ամոնիակի ($NH_3$) մոլեկուլներով աշխատող սարքը, որտեղ օգտագործվում է մոլեկուլի դիպոլային մոմենտի փոփոխությունը, երբ ազոտի ատոմն անցնում է կատարում՝ հայտնվելով ջրածնի ատոմների հարթության մյուս կողմում: Գերբարձր զգայնության շնորհիվ Մ. անփոխարինելի գործիք է դարձել մոլորակային ռադիոլոկացիայի և ռադիոաստղագիտության բնագավառում:

*Գրկ.* Зингер Дж., Мазеры, пер. с англ., М., 1961; Сигмен А., Мазеры, пер. с англ., М., 1966. *Ա. Մելիքյան*

**ՄԱԶԵՐԵԼ**, Մասերել (Masereel), Ֆրանս (30.7.1889, Բլանկենբերգե, Արևմտյան Ֆլանդրիա —4.1.1972, Ավինյոն, Ֆրանսիա), բելգիացի նկարիչ: Բելգիայի կոմունիստական կուսակցության անդամ: Սովորել է Գենտի գեղարվեստի ակադեմիայում (1907—08): 1909-ից հիմնականում ապրել է Ֆրանսիայում: Օգտագործելով էքսպրեսիոնիզմին և XX դ. գեղարվեստական այլ հոսանքներին բնորոշ ստեղծագործական սկզբունքներ, նաև գրական ֆարսիլան, ավանդական սիմվոլների և այլաբանության լեզուն՝ Մ. ստեղծել է փայտագրությունների շարքեր («վեպերը նկարներում»): Մ-ի հերոսը ժամանակակից բուրժ. աշխարհի մարդն է, յուրահատուկ հասարակական, քաղ. նկարագրով: Նա իր արվեստով արտահայտել է գիտակցված քաղ. բողոք բռնության և շահագործման դեմ («Գաղափարը, նրա ծնունդը, նրա կյանքը, նրա մահը», 1920, «Քաղաք», 1925, «Մահվան պարը», 1941): Հայտնի են Շ. դը Կոստերի, Ռ. Ռոլանի և այլոց ստեղծագործությունների նրա պատկերազարդումները: Ստեղծել է գծանկարների և ջրաներկ աշխատանքների ալբոմ, բնանկարներ, դիմանկարներ, ժանրային կոմպոզիցիաներ, աշխատել կինոյում, թատրոնում: Մ-ի արվեստը նպաստել է քննադատական ռեալիզմի կերպա-

Ֆ. Մազերել. «Գնդակահարում», փայտագրություն «Մարդու խաչելության ուղին» նկարաշարից (1918)

բային-արտահայտչական նոր միջոցների ձևավորմանը:

**ՄԱԶԼՈՒՄՈՎ** Ավետիք Լուկիանի [30.11 (12.12). 1896, Սիմֆերոպոլ—30.9.1972, Մոսկվա], սովետական կենսաբան, սելեկցիոներ, Վ. Ի. Լենինի անվ. ՀամԳԳԱ ակադեմիկոս (1956), պրոֆեսոր (1949): ՌՍՖՍՀ գիտ. վաստ. գործիչ (1966): Սոցիալիստական աշխատանքի հերոս (1965): Ավարտել է Վորոնեժի գյուղատնտ. ինստ-ը (1923): 1922-ից աշխատել է Ռամոնի (Վորոնեժի մարզ) սելեկցիոն փորձակայանում (1959-ից՝ Շաքարի ճակնդեղի և շաքարի համառուսաստանյան ԳՀԻ), 1933—1964-ին՝ շաքարի ճակնդեղի սելեկցիայի և գենետիկայի բաժնի վարիչ, իսկ 1967-ից՝ գիտ. խորհրդատու: Մ. ինքնուրույն և ուրիշ սելեկցիոներների հետ ստեղծել է շաքարի ճակնդեղի 52 սորտ և հիբրիդ, որոնցից 41-ը շրջանացվել են (1972): Լավագույն սորտերն են. Ռո-6, Ռո-65, Ռո-36, Ռ-1537, Ռո-23, Ռ-931 ևն:

Մ-ի գիտ. աշխատանքները վերաբերում են շաքարի ճակնդեղի կենսաբանության, սերմնաբուծության, սելեկցիայի և ագրոտեխնիկայի հարցերին: ՌՍՖՍՀ VI գումարման Գերագույն սովետի դեպուտատ: Պետ. (1946, 1952) և լենինյան (1965) մրցանակների դափնեկիր: Չեխոսլովակիայի գյուղատնտ. ակադեմիայի պատվավոր անդամ (1960): Պարգևատրվել է Լենինի (2), Աշխատանքային կարմիր դրոշի (3) շքանշաններով, ՍՍՀՄ ԺՏՆՑ ոսկե և գյուղատնտ. ԺՏՑ ոսկե մեծ մեդալներով:

*Երկ.* Пути увеличения производства сахара, Воронеж, 1954; Методы селекции, создание высокопродуктивных сортов и гибридов сахарной свеклы и их внедрение в производство, «Труды Всесоюзного научно-исследовательского инс-та сахарной свеклы», т. 2, в. 2, 1965; Селекция и семеноводство сахарной свеклы, [Избр. работы], Воронеж, 1968; Селекция сахарной свеклы, 2 изд., доп., М., 1970.

**ՄԱԶՄԱՆՅԱՆ** Համբարձում Գալուստի [7.8.1892, գ. Նալբանդ (այժմ՝ Շիրակամուտ, ՀՍՍՀ Սպիտակի շրջանում)—12.5.1967, Երևան], հայ սովետական թարգմանիչ: Ավարտել է Երևանի հոգևոր սեմինարիան (1919): Եղել է մանկավարժ: Գրել է բանաստեղծություններ: Թարգմանել է Ա. Պուշկինի, Ն. Օստրովսկու, Ա. Չեխովի, Լ. Տոլստոյի, Ա. Ֆադեևի, Ն. Գոգոլի, Ֆ. Դոստոևսկու, Մ. Լերմոնտովի, Կ. Սիմոնովի (չափածո) և այլ հեղինակների ստեղծագործություններ: Ռուսերենից թարգմանել է Ժյուլ Վեռնի «80.000 կիլոմետր ջրի տակ» (1937) երկը:

**ՄԱԶՄԱՆՅԱՆ** Մարտին (Մարտիրոս) Սարգսի [ծն. 24.12.1899(5.1.1900), Թիֆլիս], հայ սովետական կոմպոզիտոր, խմբավար, մանկավարժ, երաժշտական-հասարակական գործիչ: ՀՍՍՀ ժող. արտիստ (1965): ՍՄԿԿ անդամ 1947-ից: 1921-ին ավարտել է Թիֆլիսի Ներսիսյան դպրոցը: 1922—1924-ին սովորել է Մոսկվայի (հոբոյ և խմբավարություն), 1926—30-ին՝ Թիֆլիսի (ստեղծագործություն, դասատու՝ Ս. Բարխուդարյան) կոնսերվատորիաներում: 1931-ին ավարտել է Երևանի կոնսերվատորիան: Եղել է Հայֆիլհարմոնիայի դիրեկտոր և գեղ. ղեկավար (1950—54), Ռ. Մելիքյանի անվ. ուսումնարանի դիրեկտոր (1954—62): 1961—1977-ին դասավանդել է Երևանի կոնսերվատորիայում (խմբավարություն): Գրել է «Ճուտիկ» մանկական օպերան, սիմֆոնիկ («Մամե և Աշե», «Հաղթանակի պոեմ»), կամերային-գործիքային երկեր, խմբերգեր, ռոմանսներ, երգեր, ստեղծագործություններ մանուկների համար: *Թ. Արայան*

**ՄԱԶՄԱՆՅԱՆ** Միքայել Դավթի [9(21).11.1899, Թիֆլիս—29.10.1971, Երևան], հայ սովետական ճարտարապետ: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1959), ՀՍՍՀ վաստ. ճարտ. (1968): Պրոլետարական ճարտ-ների համառուսաստանյան միության («ՎՕՊՐԱ») հիմնադիր անդամներից:



Մ. Դ. Մազմանյան

1918-ին ավարտել է Թիֆլիսի Ներսիսյան դպրոցը: 1916-ին եղել է Անիում, Ն. Մառի ցուցումով պատճենահանել Տիգրան Հոնենց եկեղեցու որմնանկարները: Մասնակցել է Թիֆլիսում կազմակերպված Հայ արվեստագետների միության առաջին (1917) և երկրորդ (1919) ցուցահանդեսներին (Հ. Թումանյան, Մ. Աբեղյան, Գ. Լևոնյան, Շիրվանզադե, Դ. Դեմիրճյան, Ա. Տիգրանյան ևն շարժերով, «Անիի որմնանկարներից», «Նատյուրմորտ», «Բուսաբանական այգում» նկարներով): 1921-ին Մ. Սարյանի հանձնարարականով ընդունվել է Մոսկվայի Վխուտեմասը, ուսանել նկարչություն և ճարտարապետություն: Ուսման տարիներին ստեղծել է պլակատների, ծաղրանկարների շարք, նկարազարդել է գրքեր, ձևավորել բեմադրություններ (1924-ին Եռևտոնում Գ. Սունդուկյանի անվ. թատրոնում Կ. Հալաբյանի հետ ձևավորել է Լունաչարսկու «Կարմիր դիմակ», Դեմիրճյանի «Քաջ Նազար» պիեսները), կատարել ռուսերենից հայերեն թարգմանություններ (Պլեխանովի «Գեղարվեստը և հասարակական կյանքը» գիրքը): 1929-ին ավարտել է ինստ-ը (Վխուտեինը) և աշխատանքի գործուղվել Երևան: Մ. Սովետական Հայաստանում տեխ. կրթության կազմակերպիչներից է՝ Երևանի շինարարական (այժմ՝ Կ. Մարքսի անվ. պոլիտեխնիկական) ինստ-ի առաջին դիրեկտորը (1930—35): 1954-ից ղեկավարել է Երքաղսովետի գործկոմի ճարտ. հատակագծային արվեստանոցը, 1958-ից՝ «Երևաննախագիծ» ինստ-ի քաղաքաշինական բաժինը: Նրա նախագծերով Երևանում կառուցվել են ԵրՀԷԿ-ի բնակելի տունը (1929—30, ճարտ-ներ Կ. Հալաբյանի, Գ. Քոչարի հետ), Կենտրոնական հանրախանութը (1937, ճարտ-ներ Հ. Մարգարյանի, Գ. Քոչարի, Ա. Աhարոնյանի հետ), Կիրովի անվ. գործարանի բանավանի բնակելի թաղամասը (1932), Գրքի պալատը (1935—40, ճարտ-ներ Հ. Մարգարյանի, Ս. Ներսիսյանի հետ), Աջափնյակ բնակելի թաղամասը (1955—65) ևն: Մ-ի գլխավորությամբ կազմվել են Ղափանի (1930), Լենինականի (1932—37), Կիրովականի (1934—37), Նորիլսկի (1939—1954), Դուդինկայի (1949—54), Երևանի (1955—69) ևն գլխավոր հատակագծերը:



Մ. Մազմանյան. Գրքի պալատը (1935—1940, համալիրի շինարարությունն ավարտվել է 1960-ին, հեղինակակիցներ՝ Հ. Մարգարյան, Ս. Ներսիսյան)

Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի և «Պատվո նշան» շքանշաններով: *Ա. Զարյան*

**ՄԱԶՄԱՆՅԱՆ** Մկրտիչ Արամի [8(23).3.1910, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)—17.2.1977, Երևան], հայ սովետական հոգեբան: ՍՍՀՄ ՄԳԱ իսկական անդամ (1967), հոգեբանական գիտ. դ-ր (1965), պրոֆեսոր (1966): ՍՄԿԿ անդամ 1940-ից: Գիտության վաստ. գործիչ (1965): Ավարտել է Երևանի համալսարանի մանկավարժական ֆակուլտետը (1930): Դասախոսել է (1933) Երևանի համալսարանում, միաժամանակ աշխատել Վ. Բրյուսովի անվ. ռուսաց և օտար լեզուների ինստ-ում, որպես դեկան, ապա պրոռեկտոր: 1951-ից Խ. Աբովյանի անվ. մանկավարժական ինստ-ի հոգեբանության ամբիոնի վարիչն էր: 1957-ից ղեկավարել է ինստ-ի հոգեբանության պրոբլեմային լաբորատորիան: Մ. զբաղվել է ստեղծագործության հոգեբանությամբ, մասնավորապես ստեղծագործական պրոցեսում անգիտակցականի ունեցած նշանակության, հոգեբանության պատմության և տեսության հարցերով: 1948—52-ին եղել է «Սովետական մանկավարժ» ամսագրի խմբագիր: Մ. հեղինակ է դասագրքերի:



Մ. Ա. Մազմանյան

*Երկ.* Ուրվագծեր հոգեբանությունից, Ե., 1951: Սեր, ամուսնություն և ընտանիք, Ե., 1959: Դասախոսություններ հոգեբանությունից, Ե., 1959: Բնավորություն, Ե., 1969: Մանկավարժական հոգեբանության մի քանի հարցեր, Ե., 1975:

*Ա. Հակոբյան*

**ՄԱԶՅԱԴՅԱՆՆԵՐ**, Մազիադիներ, արաբական տոհմ *Արմինիայում* (799 — XI դ. կես): Ծագում են արաբ. *Շայբանյանների* ցեղից: Մ-ից Հայսամը տիրելով Շիրվանին (Շարվան) և օգտվելով Աբբասյանների թուլացումից՝ 861-ին հիմնել է անկախ իշխանություն, յուրացրել «շիրվանշահ» տիտղոսը: Լինելով իրանալեզու բնակչություն ունեցող Շիրվանի տիրակալներ՝ Մ. պարսկացել են:

XI դ. կեսին սելջուկները ոչնչացրել են Մ-ի իշխանությունը: *Ա. Տեր-Ղևոնդյան*

**ՄԱԶՈԽԻԶՄ**, սեռական աղավաղում, որի դեպքում հեշտանքի զգացումը (օրգազմ) հիվանդի մոտ առաջանում է սեռական պարտնյորի կողմից տանջանքների և ստորացման ենթարկվելու միջոցով: Նկարագրել է ավստրիացի գրող Լ. Զախեր-Մազոխը (այստեղից էլ՝ «Մ.» անվանումը):

**ՄԱԶՈՒԹ**, մածուցիկ հեղուկ՝ բենզինը, լիգրոինը, կերոսինը, և դիզելային վառելանյութը նավթից ուղղակի թորելով կամ կրեկինգով բաժանելուց հետո ստացվող մնացորդը: Մ-ի ֆիզիկական և քիմ. հատկությունները կախված են ելանյութ-նավթի բաղադրությունից և թեթև ֆրակցիաների մնացորդային պարունակությունից: Մուգ, հաստ շերտում սև հեղուկ է: Խտությունը՝ 890—1000 *կգ/մ³* (20°C), այրման ջերմությունը՝ 38—42 *Մջ/կգ* (9100—10000 *կկալ/կգ*): Պարունակում է խեժեր (մինչև 60%), ծծումբ (0,8—3,5%), մոխիր (0,1—0,5%) ևն: Օգտագործվում է որպես հեղուկ վառելանյութ (գազագեներատորների, արտադրական վառարանների, շոգեկաթսաների համար), նաև որպես հումք՝ քսայուղեր, կուպր, կոքս, բենզին, դիզելային վառելանյութ ստանալու համար և այլ նպատակներով: Մ-ից բենզին և դիզելային վառելանյութ ստանալու համար այն ենթարկում են կրեկինգի կամ հիդըրման:

**ՄԱԶՈՒՉՉՈ** Սալեռնիտանո (Masuccio Salernitano, գրական անունը, իսկական անունը՝ Տոմազո Գուարդատի, Guardati, մոտ 1420, Սալեռնո — մոտ 1475, Սալեռնո), իտալացի գրող: Նրա «Նովելինո» ժողովածուն (հրտ. 1476) Վերածննդի արձակի ամենանշանակալից հուշարձաններից է: Մ-ի նովելները ռեալիստական են, հակակղերական բնույթի:

**ՄԱԶՈՒՐԿԱ** (< լեհ. mazurek), լեհական ժողովրդական պար: Սկզբնավորվել է Լեհաստանի հս-արլ. շրջաններում բնակվող մազուրների մոտ: Եռանակն ունի արագ տեմպ, եռամաս չափ, կտրուկ շեշտավորված յուրահատուկ կետագծային ռիթմ: Մ. սրընթաց, դինամիկ պար է: Պարում են զույգ-զույգ, շարժվելով շրջանաձև: XIX դ. եվրոպական երկրներում տարածվել է որպես պարահանդեսային պար, բեմական մշակմամբ տեղ գտել օպերաներում և բալետներում: Մ-ի երաժշտական ձևը լայնորեն մշակվել է կոմպոզիտորների կողմից: Ֆ. Շոպենի դաշնամուրային Մ-ները (52) լեհական ազգային երաժշտական ոճի բարձրագույն արտահայտություններից են: Հայտնի են Ս. Մոնյուշկոյի, Հ. Վենյավսկու, Պ. Չայկովսկու, Ա. Լյադովի, Ա. Սկրյաբինի, Ա. Խաչատրյանի և ուրիշների Մ-ները: *Մ. Առաքելյան*

**ՄԱԶՔՈՒԹՆԵՐ**, մասքութներ, մազկութներ, մազքուտներ, մասագետներ (հուն. Μασσαγέται), Անդրկասպյան և Մերձարալյան տափաստաններում բնակվող հնագույն վաչկատուն ցեղերի հավաքական անունը: Մ-ի էթնիկական պատկանելության (սարմատական ծագում, սակերի ցեղակիցներ, ալանների նախահայրեր ևն) և անվան («մեծ զեթեր», «մեծ սակա-սկյութական հորդա» ևն) վերաբերյալ բացատրությունները գիտականորեն սպառիչ չեն: Կ. Վ. Տրևերը գտնում է, որ հունա-հռոմեական աղբյուրներում հիշվող մասսագետները և հայ հեղինակների հիշատակած Մ. էթնիկական տարբեր միավորներ էին՝ կազմավորված միանգամայն տարբեր պատմա-էթնիկական միջավայրում:

Մ-մասսագետների մասին առաջին և հակասական տեղեկությունները հաղորդում է Հերոդոտոսը, ըստ որի Մ-ի բնակության վայրը գտնվել է Երասխի ափերին (որը Հերոդոտոսը տեղադրում էր կամ Կասպից ծովից արլ., կամ՝ արմ.). երբեմն Մ-ին տարբերել է սկյութ-սակերից, երբեմն նույնացրել նրանց: Հերոդոտոսը բազմաթիվ մանրամասներ է հաղորդում Մ-ի բարքերի, կենցաղի և հավատալիքների վերաբերյալ: Մ. թ. I դ. Մ. շարժվել են արմ.՝ զբաղեցրել Կասպից ծովի հս. և հս-արմ. ափերը, Հյուսիսային Կովկասը և հարակից շրջանները, որտեղ վաղուց ի վեր բնակվում էին հոներն ու ալանները: Այդ պատճառով Դիոն Կասսիոսի (II—III դդ.), Պրոկոպիոս Կեսարացու (V—VI դդ.) և այլոց տեղեկություններում Մ-մասսագետները նույնացվել են ալանների ու հոների հետ: Ըստ հայկ. աղբյուրների, մ. թ. I դ. Մ. Անդրկովկասի հյուսիս-արևելքում ստեղծել են վարչա-քաղաքական միավոր, որը կոչվել է Մասքթաց (Մազքթաց) աշխարհ՝ Չող (Չոր, Ճոր) կենտրոնով, որից և այդ երկրամասը հաճախ կոչվել է Չողա (Ճորա, Չորա) երկիր: Մ. հպատակեցրել են բուն Աղվանքի տարացեղ բնակչությանը: Մ. թ. I դ. 2-րդ կեսին Պարթև Արշակունիներին հաջողվել է իրենց ներկայացուցչին նստեցնել Մազքթաց կամ բուն Աղվանքի թագավորական գահին, որով սկզբնավորվել է Մազքթաց կամ Աղվանից Արշակունիների հարստությունը (տես *Արշակունիներ* Մազքթաց): Հայաստանի և Մ-ի միջև երբեմն տեղի ունեցող պատերազմները (մասնավորապես 335—336-ին, երբ Մ. ջախջախվեցին) հրահրել է Սասանյան Պարսկաստանը: Աղվանքի Մ. իրենց գոյությունը պահպանել են մինչև արաբ. տիրապետությունը, որից հետո բռնությամբ մահմեդականացվել են, կորցրել իրենց էթնիկական դեմքը և ձուլվել հետագա դարերում նույն տարածքի վրա կազմավորված էթնիկական խմբերին:

*Գրկ.* Պրոկոպիոս Կեսարացի, Ե., 1967 (Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին 5, Բյուզանդական աղբյուրներ 1): Հովսեպոս Փլավիոս: Դիոն Կասսիոս, Ե., 1976 (Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին 9, Հին հունական աղբյուրներ 1): Զարբհանալյան Գ., Պատմություն հայերեն դպրությանց, Վնտ., 1932: Ուլուբաբյան Բ. Ա., Աղվանից թագավորական տան հարցի շուրջը, «ԼՀԳ», 1971, № 7: Геродот, История в девяти книгах, Л., 1972; Пьянков И.В., К вопросу о маршруте похода Кира II на массагетов, «ВДИ», 1964, № 3.

*Բ. Ուլուբաբյան*

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱ** (հուն. μαθηματική,< μάθημα — գիտելիք, գիտություն), գիտություն, որի առարկան իրական աշխարհի տարածական ձևերն ու քանակական հարաբերություններն են ... (Էնգելս Ֆ., Անտի Դյուրինգ, 1967, էջ 7—8):

Մաթ. հասկացությունները կոնկրետ առարկաների, երևույթների ընդհանրացումներ՝ վերացարկումներ են: Դրա շնորհիվ Մ-ի մեթոդները, կանոններն ու օրենքները կիրառելի են իրենց նյութական բովանդակությամբ ամենաբազմազան բնույթի առարկաների ու երևույթների նկատմամբ: Ընդհանրացումը, վերացարկումը հատուկ է յուրաքանչյուր գիտության, սակայն Մ-ում այն ավելի հեռուն է գնում: Բնական, տեխ., տնտ. ու սոցիալական գիտությունների զարգացումը Մ-ին թելադրում է շարունակ ընդլայնելու տարածական ձևերի ու քանակական հարաբերությունների վերաբերյալ ըմբռնումները:

Մ-ի զարգացումը տարբեր փուլեր է ունեցել՝ կախված դիտարկման ենթակա առարկաների և դրանց հետազոտման մեթոդների բնույթից, իրական աշխարհի տարածական ձևերի ու քանակական հարաբերությունների ընդհանրացման՝ վերացարկման աստիճանից:

1. Հնագույն ժամանակներից մինչև մ. թ. ա. VI—V դդ. մեծ քանակությամբ փաստական նյութի կուտակման ժամանակաշրջան է: Կենդանիների, մարդկանց, իրերի համրանքի հիման վրա դարերի ընթացքում նախ առաջացել են բնական թվերի հասկացությունները, իսկ հացահատիկի քանակը, ճանապարհի երկարությունը, հողամասի մակերեսը ևն չափելու պահանջը հանգեցրել է պարզագույն կոտորակների անվանումների ու նշանակումների առաջացմանը և դրանց նկատմամբ թվաբանական գործողությունների կատարման կանոնների մշակմանը: Այսպիսով աստիճանաբար առաջացել է մաթ. հնագույն գիտությունը՝ *թվաբանությունը*: Մակերեսների ու ծավալների չափումը, շինարարական տեխնիկայի, իսկ ավելի ուշ նաև աստղագիտության կարիքները աստիճանաբար ստեղծել են մաթ. մյուս հնագույն գիտության՝ *երկրաչափության* տարրերը: Դրանց ծագումն ու զարգացումը զուգահեռաբար ու միմյանցից անկախ ընթացել են շատ ժողովուրդների մոտ:

Մաթ. գիտելիքների վերաբերյալ գրավոր հնագույն աղբյուրները եգիպտական *մաթեմատիկական պապիրուսները* (մ. թ. ա. 2-րդ հազարամյակ) և բաբելական *սեպագիր մաթեմատիկական բնագրերն* են (մ. թ. ա. 2—1 հազարամյակներ): Դրանք վկայում են բաբելացիների՝ թվերի հետ գործողություններ կատարելու, մակերեսներ և ծավալներ հաշվելու, հավասարումներ լուծելու, աղյուսակներ կազմելու հմտության մասին: Աստղագիտության պահանջներից սկզբնավորվում է *եռանկյունաչափությունը*: Սեպագիր մաթ. ավանդույթը շարունակվել է Ասորեստանում, Պարսկաստանում, Ուրարտուում և

հելլենիստական երկրներում՝ մինչև մ. թ. ա. I դ.:

Այդ հարուստ փաստական նյութը, սակայն, երկար ժամանակ որևէ տեղ համակարգված չի շարադրվել. եղել են թվաբանական կամ երկրաչափական, հաճախ միմյանց հետ չառնչվող, խնդիրների հավաքածուներ, ընդ որում՝ լուծումների ու հաշվումների ընդհանուր կանոններ չէին ձևակերպվում, դրանք հասկացվում էին կոնկրետ խնդիրների լուծումներից:

2. Մ-ի զարգացման երկրորդ փուլը ընդգրկում է մ. թ. ա. VI դարից, երբ այն աստիճանաբար դառնում է որոշակիորեն ձևականացված ու համակարգված հասկացությունների և առաջադրությունների տրամաբանական հաջորդականությամբ կառուցված գիտություն: Ամբողջությամբ վերցրած, Մ-ի դեդուկտիվ կառուցումը հույների վաստակն է: *Պյութագորասի* դպրոցում թվաբանությունը համարողական պարզունակ արվեստից դառնում է *թվերի տեսություն*. գումարվում են թվաբանական պրոգրեսիաներ, ուսումնասիրվում են թվերի բաժանականությունը, թվաբանական, երկրաչափական, ներդաշնակ միջիններ, կատարյալ թվերը են: Այդ ժամանակ են ծագել հին աշխարհի երեք նշանավոր՝ *շրջանի քառակուսացման*, *անկյան եռատման*, *խորանարդի կրկնապատկման* խնդիրները, ստացվել են առաջին իռացիոնալ թվերը (օրինակ, քառակուսու անկյունագծի և կողմի անհամաչափելիությունից), հայտնաբերվել են բոլոր հինգ կանոնավոր *բազմանիստերը* (որպես արդյունք պլատոնյան դպրոցի կողմից այնպիսի իդեալական պարզագույն մարմինների որոնումների, որոնք տիեզերքի հիմնաքարեր կարող էին ծառայել) են:

Մ. թ. ա. III դարից հելլենիստական աշխարհի գիտական կենտրոն դարձած Ալեքսանդրիայում Մ. ևս արագ զարգանում է և դառնում կուռ տրամաբանությամբ կառուցված գիտություն: *Էվկլիդեսը* հավաքում և խիստ տրամաբանությամբ մշակում է երկրաչափության բնագավառում նախորդ դարերում ստացված բոլոր արդյունքները, դնում է թվերի համակարգված տեսության հիմքերը: *Արքիմեդը* ճշգրիտ կամ մոտավորությամբ հաշվել է մակերեսներ, ծավալներ, ծանրության կենտրոններ, խստիվ ապացուցել է $3\frac{10}{71}<\pi<3\frac{10}{70}$ անհավասարությունը: Հետագայում դրվել են հաշվողական երկրաչափության (Հերոն, I դ.) և գնդային եռանկյունաչափության (Պտղոմեոս, II դ.) հիմունքները, մշակվել են 1-ին և 2-րդ աստիճանի հավասարումների լուծման ընդհանուր կանոններ (*Դիոֆանտ*, III դ.), ընդ որում դրական ամբողջ և կոտորակային թվերի հետ միասին գործածվել են նաև «հանվող» թվեր (բացասական թվի նախազգաղափարը): III դարից հին աշխարհի քաղաքակրթության ընդհանուր անկման հետ Մ. ևս անկում է ապրում. հույն մաթեմատիկոսները հիմնականում զբաղվում են նախորդ հեղինակների երկերի մեկնություններով:

Հին Չինաստանում մ. թ. ա. II—I դդ. հայտնի են եղել ամբողջ թվերից քառակուսի և խորանարդ արմատ հանելու կանոններ, գծային հավասարումների համակարգերի լուծման եղանակներ, $\pi$ թվի համար ստացել են 355/113 արժեքը: Միջնադարյան չինական Մ. զարգացման բարձրագույն աստիճանի է հասել XIV դ.:

Հնդկաստանում Մ. վերելք է ապրել V—XII դդ.: Մ-ի զարգացման գործում հնդիկները երկու խոշոր վաստակ ունեն: Առաջինը արդի տասական դիրքային *թվարկության համակարգի* ստեղծումն է: Երկրորդ խոշոր վաստակը ոչ միայն կոտորակային, այլև իռացիոնալ և բացասական թվերով ազատորեն գործողություններ կատարող *հանրահաշվի* ստեղծումն է. մշակել են քառակուսի հավասարումների լուծման ընդհանուր կանոն, նշել են քառակուսի արմատի երկարժեքությունը, ազատորեն գործողություններ են կատարել իռացիոնալ արտահայտությունների հետ, մուծել են սինուսի, կոսինուսի և սինուս-վերզուսի գծերը: Հնդիկ մաթեմատիկոսներից ամենանշանավորներն են Արիաբհաթան (V դ.), Բրահմագուպտան (VII դ.), Բհասքարան (XII դ.) և այլք:

Մերձավոր Արևելքում և Միջին Ասիայում Մ. բարձր զարգացման է հասել IX—XV դդ.: Այդ երկրների մաթեմատիկոսների ամենամեծ վաստակն այն է, որ արաբերեն են թարգմանել ու պահպանել հին հույների ու հնդիկների մաթ. աշխատությունները, որոնց միջոցով էլ հետագայում եվրոպացիները առաջին անգամ ծանոթացել են հին հուն. ու հնդ. Մ-ի նվաճումներին, այդ թվում՝ հնդիկների ստեղծած թվարկության տասական համակարգին ու հնդ. թվանշաններին (որոնք երկար ժամանակ անվանվել են «արաբական»): Նրանք որոշակի ավանդ ունեն հատկապես հանրահաշվի և եռանկյունաչափության հետագա զարգացման գործում: Այդ դարերի ականավոր մաթեմատիկոսներից են Ալ-Խորեզմին (IX դ.), Բիրունին (IX—X դդ.), Ալ-Բատտանին (IX—X դդ.), Աբուլ-Վեֆան (X դ.), *Օմար Խայյամը* (XI—XII դդ.), *Նասրեդդին Թուսին* (XIII դ.), Ալ-Կաշին (XV դ.) և այլք: Մասնավորապես, Ալ-Խորեզմիի անունից է եվրոպականացված հնչմամբ առաջացել «ալգորիթմ» տերմինը և նրա հիմնական աշխատության «Ալ-ջեբր» համառոտ անունից՝ նոր գիտության՝ հանրահաշվի «ալգեբրա» անվանումը: Բանաստեղծ և մաթեմատիկոս Օմար Խայյամը, բացի հանրահաշվական աշխատություններից, գրել է ընդարձակ մեկնություններ Էվկլիդեսի «Սկզբունքներ»-ի մասին, որտեղ զուգահեռների աքսիոմը փոխարինել է մի քանի ընդունելիություններով, ինչպես և կազմել է պարսկ. օրացույց:

Արևմտյան Եվրոպայում Մ. սկսել է զարգանալ ավելի ուշ և դանդաղ: XII—XV դդ. եղել են գերազանցապես հին աշխարհից ու Արևելքից ժառանգած Մ-ի յուրացման ժամանակաշրջան: Սկսած XII դարից թարգմանություններ են կատարվել արաբերենից, իսկ XV դարից սկսվում է ծանոթացումը հուն. մաթ. բնագրերին: Եվրոպացիները ընդունեցին թվարկության հնդ. տասական դիրքային համակարգը, որի օգնությամբ մշակեցին ստորակետով գրված տասնորդական կոտորակների հետ թվաբանական գործողությունների կանոնները, իրենց հետազոտություններով զգալի չափով զարգացրին թվերի տեսությունը, հանրահաշիվը, երկրաչափությունը ու եռանկյունաչափությունը, իսկ XVI դ. կատարելապես մշակեցին հանրահաշվի տեսական հարցերը. գտան 3-րդ և 4-րդ աստիճանի հանրահաշվական ընդհանուր հավասարումների լուծումները, հայտնաբերեցին այն դեպքերը, երբ հավասարման արմատներն արտահայտվում են կոմպլեքս թվերով, որը և առաջին անգամ հիմք տվեց ընդունելու կոմպլեքս թվերով հաշվումներ կատարելու օգտակարությունը: Այստեղ առանձնապես մեծ վաստակ ունեն իտալացիները (Ֆիբոնաչչի, Ս. Ֆերրո, Ն. *Տարտալյա*, Լ. Ֆերրարի, Հ. *Կարդանո* և այլք): Հանրահաշվական հավասարումների տեսությունը կատարելության է հասցնում ֆրանսիացի Ֆ. *Վիետը* (XVI—XVII դդ.), որի մուծած տառային գործակիցները և +, — նշանների արդի իմաստով գործածումը վճռական դեր խաղացին էապես նոր՝ ընդհանուր արդյունքներ ստանալու գործում: Նրան է պատկանում նաև եռանկյունաչափական ֆունկցիաների սահմանումը ցանկացած արգումենտի համար: Արևմտաեվրոպական Մ. XVI—XVII դդ. առաջին անգամ գերազանցում է Հին Աշխարհի և Արևելքի Մ-ին:

Մինչև XVII դ. Մ-ի ուսումնասիրության առարկան, բացառությամբ առանձին դեպքերի, եղել են հաստատուն մեծությունները՝ թվերը և նրանց միջև առնչությունները. ուստի և հնագույն ժամանակներից մինչև XVII դ. համարվում է հաստատունների Մ-ի ժամանակաշրջան:

3. XVII դարից սկսվում է Մ-ի զարգացման նոր փուլ՝ փոփոխական մեծությունների Մ-ի ժամանակաշրջանը: Հասարակական-տնտեսական նոր հարաբերությունները, արդյունաբերության, հատկապես մեքենաշինության, խոշոր նավաշինության, օվկիանոսային նավագնացության արագ զարգացումը նոր պահանջներ են առաջադրում, որոնց այլևս չէին կարող բավարարել հաստատունների Մ-ի և արքիմեդյան մեխանիկայի օրենքներն ու մեթոդները: Բնական գիտությունները զարգացման նոր փուլ են թևակոխում. հայտնագործվում են ընկնող մարմնի (Գ. *Գալիլեյ*), մոլորակների շարժման (Յո. *Կեպլեր*), տիեզերական ձգողականության (Ի. *Նյուտոն*), ճնշումից գազի ծավալի կախման (*Բոյլ*) օրենքները են: Էական է այն, որ առանձին երևույթների օրինաչափություններին ընդհանուր՝ մաթ. բանաձևումներ են տրվում. ստեղծվում է մաթեմատիկական բնագիտությունը, որը իր հերթին խթանում է Մ-ի զարգացումը: Փոփոխական ժամանակ, հեռավորություն, ճանապարհ, արագություն և ֆիզիկական այլ հասկացությունների ընդհանրացմամբ ստեղծվում է վերացական՝ մաթ. փոփոխական մեծության հասկացությունը, իսկ ֆիզիկական մեծությունների փոխադարձ կապերի ընդհանրացմամբ՝ ֆունկցիոնալ

առնչության՝ *ֆունկցիայի* հասկացությունը:

Նույնը տեղի է ունենում նաև բուն Մ-ում: Ջ. *Նեպերը*, հայտնագործելով լոգարիթմները, դիտարկում է թվի փոփոխման հետ լոգարիթմի անընդհատ փոփոխումը՝ առաջին պատկերացումը անընդհատ ֆունկցիայի մասին, որը չի տրված ո՛չ հանրահաշվական արտահայտությամբ, ո՛չ էլ երկրաչափական կառուցումով: Ռ. *Դեկարտը* մշակում է (1637) կոորդինատների մեթոդը, հանրահաշիվը կիրառում է երկրաչափության մեջ, գծերն ուսումնասիրում հավասարումների օգնությամբ: Պ. *Ֆերման* ստեղծում է (1638) ֆունկցիայի մաքսիմումը, մինիմումը և կորի շոշափողի անկյունային գործակիցը գտնելու մեթոդ: Յո. Կեպլերը, Բ. *Կավալիերին*, Պ. Գուլդենը, Պ. Ֆերման, Ջ. Վալլիսը, Բ. Պասկալը և այլք հաշվում են մի շարք հարթ պատկերների մակերեսներ, մարմինների ծավալներ, ծանրության կենտրոններ և այլն:

1630—60-ին երկրաչափական ու ֆիզիկական բազմապիսի խնդիրների լուծման շատ հարուստ փորձեր էր կուտակվել, որոնցում կիրառվում էին մեծությունները «շատ մանր» մասերի տրոհելու և այդ «մանրը» մասերի հարաբերությունները կամ գումարները գտնելու զանազան եղանակներ: Կուտակված փորձի հիմքի վրա Ի. Նյուտոնը և Գ. Վ. *Լայբնիցը*, ընդհանրացնելով ժամանակակիցների և սեփական հետազոտությունների արդյունքները, 1665—84-ին ստեղծեցին (միմյանցից անկախ) փոփոխականի, ֆունկցիայի, **ածանցյալի**, **դիֆերենցիալի** և **ինտեգրալի** ընդհանուր հասկացությունները, մշակեցին դիֆերենցիալներ (ածանցյալներ) և ինտեգրալներ (նախնականներ) գտնելու կանոններ և, որ ամենից կարևորն էր, հայտնագործեցին դիֆերենցման (ածանցման) և ինտեգրման գործողությունների փոխադարձ կապը (Լայբնիցի—Նյուտոնի բանաձևը): Այսպես ավարտվեց *դիֆերենցիալ հաշվի* և *ինտեգրալ հաշվի* ձևավորումը՝ իբրև մաթ. նոր գիտություն:

Դիֆերենցիալ և ինտեգրալ հաշվի զարգացման գործում մեծ ավանդ են ներդրել Յա. և Դ. *Բեռնուլիները*, Գ. Լոպիտալը, Լ. *Էյլերը*, Ժ. *Լագրանժը*, Պ. *Լապլասը*, Ա. *Լեժանդրը*, Ժ. *դ'Ալամբերը*, Ժ. Ֆուրիեն, Բ. Թեյլորը, Կ. *Գաուսը* և այլք:

Նոր հաշիվը XVIII դ. և XIX դ. առաջին կեսին արագ կիրառություններ է գտնում երկրաչափության, մեխանիկայի, ֆիզիկայի, աստղագիտության, քիմիայի մեջ և շատ այլ բնագավառներում. ձևավորվում են մի քանի ինքնուրույն ուղղություններ՝ *դիֆերենցիալ երկրաչափություն*, *դիֆերենցիալ հավասարումներ*, անվերջ *շարքերի* տեսություն ևն: Ընդհանրապես ընդլայնվում է մաթ. մեթոդների կիրառությունների ոլորտը, առաջանում են Մ-ի նոր բնագավառներ: Միաժամանակ շարունակվում են դասական հարցերի ուսումնասիրությունները: Օրինակ, Է. *Գալուայի* արդյունքները հավասարումների՝ արմատանշաններով լուծելիության մասին: Մաթ. մեթոդների այդպիսի հաջող ու հախուռն կիրառությունները, որոնք որպես կանոն ճիշտ արդյունքների էին հանգեցնում, ժամանակ չէին տալիս և կարիք էլ չէին զգում այդ մեթոդների ու կանոնների տեսական խիստ հիմնավորման: Դրա պահանջը հասունացավ, երբ Մ. թևակոխեց իր զարգացման նորագույն փուլը:

4. XIX դ. առաջին կեսից սկսվում է **արդի մաթեմատիկայի ժամանակաշրջանը**, որը բնութագրվում է որոշակի միտումով՝ վերանայելու և նորովի ու խիստ սահմանելու Մ-ի հիմնական հասկացությունները, տրամաբանորեն հիմնավորելու նրանց նկատմամբ կատարվող բոլոր գործողությունները: Այդ հանգեցնում է իրական աշխարհի տարածական ձևերի ու քանակական հարաբերությունների նորովի ըմբռնման, ընդհանրացման ու վերացարկման:

Այդ միտումը սկսվում է նոր հաշվի հիմնավորումով. նախկին մշուշոտ պատկերացումների փոխարեն ճշգրիտ սահմանվում են անվերջ փոքրի, ֆունկցիայի, նրա սահմանի ու անընդհատության հասկացությունները, մշակվում է **իռացիոնալ և իրական թվերի** տեսությունը, խստիվ ապացուցվում են շատ առաջադրույթներ, որոնք մինչ այդ ակներև էին համարվում, ստեղծվում է **սահմանների տեսությունը** (Օ. *Կոշի*, Բ. *Բոլցանո*, Կ. *Վայերշտրաս*, Ռ. *Դեդեկինդ*), որի օգնությամբ հիմնավորվում է ողջ դիֆերենցիալ և ինտեգրալ հաշիվը, որը կոչվում է նաև **անվերջ փոքրերի** անալիզ, իսկ հետագայում, առավել լայն ընկալմամբ՝ **մաթեմատիկական անալիզ**: Այդ ուղղությամբ հետագա հետազոտությունները հանգեցրին մաթ. անալիզի ինքնուրույն բաժինների առաջացմանը՝ իրական փոփոխականի ֆունկցիաների տեսություն, կոմպլեքս փոփոխականի ֆունկցիաների տեսություն (տես *Ֆունկցիաների տեսություն*), *մասնական ածանցյալներով հավասարումներ*, *ինտեգրալ հավասարումներ*, *վարիացիոն հաշիվ*, *ֆունկցիոնալ անալիզ* ևն, որոնց մեթոդները լայն կիրառություններ են գտնում Մ-ի նաև այլ բաժիններում ու այլ գիտություններում: 1879—1884-ին տպագրվում են Գ. *Կանտորի* աշխատանքները անվերջ բազմությունների վերաբերյալ. դրանով իսկ հիմք է դրվում *բազմությունների տեսությանը*:

Երկրաչափության բնագավառում հեղաշրջիչ դեր կատարեցին *Լոբաչևսկու* ոչ էվկլիդեսյան երկրաչափության հայտնագործումը, ցանկացած օբյեկտներից բաղկացած ռիմանյան վերացական տարածության հասկացությունը, որոնք Մ-ի ողջ կառուցվածքի նորովի ըմբռնման սկիզբը դրեցին: Կոմպլեքս փոփոխականի ֆունկցիաների երկրաչափական տեսության հետագա զարգացման վրա խոր հետք են թողնում Բ. *Ռիմանի* գաղափարները: Դ. *Հիլբերտը* մշակեց երկրաչափության հիմունքները. ստեղծվեցին աքսիոմատիկ երկրաչափություններ, մետրիկական, աֆինային, կոնֆորմ, պրոյեկտիվ «կապակցություններով» բազմաչափ տարածությունների դիֆերենցիալ երկրաչափություններ: XX դ. հանգամանորեն ուսումնասիրվում են դիֆերենցիալ-երկրաչափական բազմաձևությունները, ձևավորվում է *տոպոլոգիան*:

Հանրահաշիվը, ուսումնասիրության առարկաների ու մեթոդների լայն ընդհանրացումներ կատարելով, մշակում է **խմբերի տեսությունը**, **դաշտերի**, **օղակների**, **կառուցվածքների (ստրուկտուրաների) տեսությունները**, որոնք ներթափանցում են Մ-ի բոլոր բաժինները և լայն կիրառություններ գտնում շատ գիտություններում. ստեղծվում են, այսպես կոչված, «վերացական» հանրահաշիվներ:

*Հավանականությունների տեսությունը*, զինվելով անալիտիկ ֆունկցիաների, իրական փոփոխականի ֆունկցիաների, դիֆերենցիալ հավասարումների, չափի տեսությունների մեթոդներով, արագ զարգանում է և լայն կիրառություն գտնում բնական, տնտ., ռազմ. գիտությունների շատ բնագավառներում: Առաջանում ու զարգանում են նոր ուղղություններ՝ *մաթեմատիկական վիճակագրություն*, պատահական պրոցեսների տեսություն, *ինֆորմացիայի տեսություն*, *խաղերի տեսություն* ևն:

Մ-ի զարգացման արդի փուլում էապես նորն այն է, որ ուսումնասիրման ենթակա տարածական ձևերի ու քանակական հարաբերությունների ընդհանրացումներն ու վերացարկումները կատարվում են կանխամտածված՝ ելնելով Մ-ի զարգացման ներքին պահանջներից: Ստեղծվում են ընդհանուր՝ վերացական տեսություններ, անհրաժեշտ են դառնում նոր տեսությունների խիստ հիմնավորման ու նրանց տրամաբանական կառուցման հարցերը, ստեղծվում է Մ-ի ինքնուրույն բաժին՝ *մաթեմատիկական տրամաբանությունը*:

Մաթ. տեսական հետազոտությունների արդյունքների գործնական օգտագործումը պահանջում է առաջադրվող խնդիրների պատասխաններն ստանալ թվերով: XIX դ. վերջերից մշակվում են **անալիզի** *թվային* մեթոդներ, հաշվումները հեշտացնելու և արագացնելու համար ստեղծվում են ընդարձակ մաթ. աղյուսակներ: XX դ. կեսերից զարգանում է մաթ. *կիբեռնետիկան*, ստեղծվում և արագ կատարելագործվում են արագագործ էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ (տես *Թվանշանային հաշվիչ մեքենա*), որոնք լայնորեն օգտագործվում են բոլոր բնագավառներում և խթանում մաթ. մեթոդների աննախընթաց արագ ներթափանցումը գիտության ու տնտեսության բոլոր ասպարեզները. տեղի է ունենում գիտության ու արտադրության բոլոր ոլորտների արագ «մաթեմատիկացում»:

**Ռուսաստանում** Մ-ի ասպարեզում ժամանակի մակարդակով գիտական աշխատանքներ սկսվել են XVIII դ. երկրորդ քառորդից, Պետերբուրգի նորաստեղծ ակադեմիայում, ուր հրավիրել էին Եվրոպայի մի խումբ ականավոր մաթեմատիկոսներ՝ Ն. և Դ. Բեռնուլիներ, Լ. Էյլեր, Խ. Գոլդբախ և ուրիշներ: XIX դ. առաջին կեսից այստեղ է ծավալվել նաև ռուս մաթեմատիկոսներ Վ. Յա. Բունյակովսկու, Մ. Վ. *Օստրոգրադսկու*, Պ. Լ. *Չեբիշևի*, Ա. Ա. *Մարկովի*, Ա. Մ. *Լյապունովի*, Ս. Վ. *Կովալևսկայայի* և այլոց գործունեությունը, ձևավորվել **Պետերբուրգի մաթեմատիկական գիտական**

դ պ ր ո ց ը: XIX դ. սկզբներին Կազանում (1804), Խարկովում (1804), Պետերբուրգում (1819) և Կիևում (1834) բացվում են ռուս. համալսարաններ՝ ֆիզիկամաթեմատիկական ֆակուլտետներով, որոնք նույնպես դառնում են մաթ. գիտությունների զարգացման ճանաչված կենտրոններ: Կազանի համալսարանում է ստեղծագործել Ն. Ի. Լոբաչևսկին: Մոսկվայի համալսարանում նույնպես, այդ ժամանակից սկսվում է Մ-ի զարգացումը: 1864-ին կազմակերպվում է Մոսկվայի մաթ. ընկերությունը, հետագայում ձևավորվում է Մ ո ս կ վ ա յ ի մ ա թ ե մ ա տ ի կ ա կ ա ն գ ի տ ա կ ա ն դ պ ր ո ց ը, որը մեծ համբավ ձեռք բերեց հատկապես XX դ.:

ՍՍՀՄ-ում Մ. զարգանում է ՍՍՀՄ ԳԱ-ի և միութենական հանրապետությունների ԳԱ-ների մաթ. ինստ-ներում և մի շարք առաջատար համալսարաններում, որոնց մեծ մասը կազմակերպվել են սովետական իշխանության տարիներին: Առաջացել են մաթ. գիտական նոր կենտրոններ՝ Թբիլիսիում, Երևանում, Բաքվում, Վիլնյուսում, Տաշքենդում, Մինսկում, Սվերդլովսկում, Նովոսիբիրսկում և այլուր, որտեղ արդյունավետ աշխատանք է կատարվում մաթ. գիտությունների ասպարեզում:

Մ ա թ ե մ ա տ ի կ ա ն Հ ա յ ա ս տ ա ն ու մ: Հայաստանի տարածքում մաթ. գիտելիքների վերաբերյալ ամենահին աղբյուրները ուրարտական սեպագիր արձանագրություններն են (IX—VII դդ. մ. թ. ա.): Դրանք վկայում են, որ գործածվել է թվարկության դիրքային տասական-վաթսունական խառն համակարգ, մի քանի պայմանշանների օգնությամբ գրվել են բավականաչափ մեծ ամբողջ թվեր, ինչպես նաև վաթսուներորդական կոտորակային թվեր, և նրանց հետ կատարվել գումարման և հանման գործողություններ:

Մինչև մեսրոպյան գրի ստեղծումը մաթ. գիտելիքների վերաբերյալ հայերեն գրավոր աղբյուրներ չեն պահպանվել: Սակայն հազարամյակներ առաջ կառուցված և կանգուն կամ կիսավեր վիճակում մեզ հասած ամրոցներն ու պալատները, վանքերն ու եկեղեցիները, կամուրջներն ու ոռոգման համակարգերը վկայում են, որ դեռևս հին դարերում հայերն ունեցել են բարձր մակարդակի մաթ. գիտելիքներ:

Գրի ստեղծումից հետո բացված հայկ. դպրոցներում ուսուցանվում էին նաև մաթ. և բնական գիտություններ: Հայերեն տառերն օգտագործվում են նաև իբրև թվանշաններ, ստեղծվում է թվարկության հայկ. այբբենական տասական (ոչ դիրքային) համակարգ:

Հայերեն մաթ. առաջին ձեռագրերը (VII դ.) *Անանիա Շիրակացու* թվաբանության դասագրքի մեզ հասած 5 մասերն են՝ գումարման և հանման, բազմապատկման, բաժանման («վեցհազարյակ»), աղյուսակներ խնդրագիրք՝ բաղկացած 24 խնդիրներից՝ պատասխաններով («Յաղագս հարցման և լուծման») և *խրախճանականներ*: Անանիա Շիրակացու աղյուսակները համարվում են հնագույնը աշխարհում հայտնի համանման աղյուսակներից:

Մաթ. կրթության բնագավառում Անանիա Շիրակացու ավանդույթները շարունակվում են հետագայում և հատկապես բարձր մակարդակի հասնում XI—XIV դդ. միջնադարյան հայկ. համալսարաններում, որտեղ, այլ գիտությունների հետ, բարձր մակարդակով ուսումնասիրվում էին նաև ու ս ո ղ ու թ յ ու ն—Մ., աստղագիտություն, բնագիտություն, վերածնահատվում ու զարգացվում էր հին աշխարհի մաթ. հարուստ ժառանգությունը, որով հայկ. համալսարաններն էապես տարբերվում էին Արևմտյան Եվրոպայի միջնադարյան համալսարաններից: *Հովհաննես Սարկավագը* (XI—XII դդ.) և ուրիշները, Անիի, Հաղպատի և այլ դպրոցներում, կրթական համակարգում պատշաճ տեղ էին տալիս բնագիտությանն ու մաթեմատիկային: Հ. Սարկավագը առաջինն է եղել (Ռ. Բեկոնից մոտ 150 տարի առաջ), որ գիտության համար առաջնային է համարել փորձը: Նրա «Յաղագս անկիւնաւոր թուոց» դասագրքից երևում է, որ հայկ. դպրոցներում գործնական թվաբանության հետ միասին ուսումնասիրել են նաև տեսական թվաբանություն՝ թվերի տեսություն: Տեսական ու կիրառական Մ-ի և մեխանիկայի զարգացման գործում մեծ վաստակ ունեն *Լևոն Փիլիսոփան* (IX դ.), *Նիկողայոս Արտավազդը* (XIV դ.) և ուրիշներ, որոնք աշխատել են Բյուզանդիայում, շարունակել ու զարգացրել հին հույների և Անանիա Շիրակացու ավանդույթները:

Հայոց դպրոցներում օգտագործվել են հույն դասականների բազմաթիվ երկեր: Մասնավորապես Էվկլիդեսի նշանավոր «Սկզբունքները» առաջինը հայերն են բնագրից թարգմանել: Թարգմանության պահպանված առանձին մասերը վերագրվում են Անանիա Շիրակացուն (VII դ.), *Գրիգոր Մագիստրոս Պահլավունուն* (XI դ.) և ուրիշների, իսկ XVII դ. սկզբին գրված «Երկրաչափութիւն Եւգլիտին» ձեռագիր դասագրքում (վերագրվում է *Գրիգոր Բաբունապետ Կեսարացուն*) այն ուսուցման նպատակով վերաշարադրված է գրեթե ամբողջությամբ: Սա պատմական կարևոր փաստ է, քանի որ այդ երկը արաբները թարգմանել են IX դ. (ասորի բժիշկների օգնությամբ՝ նախ հունարենից ասորերենի, ապա՝ ասորերենից արաբերենի), եվրոպացիները դրան ծանոթացել են XII դ. արաբերենից լատիներենի թարգմանած տարբերակով, իսկ բնագրին ծանոթացել և լատիներեն են թարգմանել միայն XVI դ., որից հետագայում թարգմանել են այլ լեզուներով:

XIV դարից սկսած, երբ Հայաստանը կորցրեց իր անկախությունը և զրկվեց պետականությունից, աշխարհով մեկ սփռված գաղթավայրերում ստեղծվում էին հայկ. դպրոցներ, որտեղ պատշաճ տեղ էր տրվում մաթ. կրթությանը: Հայ մաթեմատիկոսները կազմել են մի շարք ձեռագիր ու տպագիր դասագրքեր: Մաթեմատիկայի հայերեն առաջին տպագիր դասագիրքն է «Արհեստ համարողութեան» (1675, Մարսել):

XVIII դ. տպագրվել է մաթեմատիկայի հայերեն 6 դասագիրք, XIX դ.՝ 84 դասագիրք ու ձեռնարկ, որոնց մեծ մասը հայ մաթեմատիկոսներն ինքնուրույն են կազմել: Առանձնապես արժեքավոր են Սահակ Պրոնյանի «Երկրաչափութիւն»-ը (1794) և «Եռանկիւնաչափութիւն»-ը (1810), Ղուկաս Տերտերյանցի «Խոնարհագոյն ուսողութիւն»-ը երեք գրքով՝ «Համարողութիւն եւ նշանագրովք համարողութիւն», «Պարզ երկրաչափութիւն» (1843), «Երեքանկիւնաչափութիւն եւ հատածք կոնի» (1846): Սրանք եռանկյունաչափության, հանրահաշվի և վերլուծական երկրաչափության հայերեն առաջին դասագրքերն են՝ գրված պատշաճ մակարդակով: Այս և այլ դասագրքերում հաջողությամբ մշակվել են հայերեն մաթ. շատ տերմիններ, որոնց մեծ մասը այսօր էլ գործածվում են:

Եթե հայկ. դպրոցներում մաթ. կրթությունը միշտ համապատասխանել է ժամանակի դպրոցական կրթության ամենաբարձր պահանջներին, ապա հայկ. պետականության բացակայության պայմաններում, երբ Հայաստանում չկային բարձրագույն մաթ. դպրոցներ, համապատասխան հող չկար նաև մաթ. գիտությունների զարգացման համար:

Այդպիսի պայմաններ ստեղծվեցին միայն սովետական կարգերի հաստատումից հետո, երբ Երևանում բացվեց հայկ. համալսարան (1920):

Երևանի համալսարանում բարձրագույն մաթ. կրթությունն սկսվել է նրա բացման օրից, իսկ մաթեմատիկոսների պատրաստումը՝ 1924-ից, ֆիզիկամաթեմատիկական ֆակուլտետում: Այն հետագայում արագ աճել է և տրոհվել 4 ֆակուլտետների, այդ թվում՝ մեխանիկամաթեմատիկական և կիրառական Մ-ի:

Հայկ. ՍՍՀ-ում Մ-ի ասպարեզում սիստեմատիկ գիտական աշխատանքներ ընկրկվել են 1930-ական թվականների վերջերից՝ Երևանի համալսարանում, հիմնականում նվիրված կոմպլեքս տիրույթում *մոտավորությունների տեսության* հարցերին: Հայկ. ՍՍՀ ԳԱ հիմնադրումից (1943) հետո համալսարանում և ակադեմիայում համագործակցված հետևողական աշխատանք է տարվում բարձր որակավորում ունեցող մաթեմատիկոսների պատրաստման և մաթ. գիտությունների զարգացման համար: Հայ մաթեմատիկոսների հետազոտությունները շուտով գրավեցին գիտական հասարակայնության ուշադրությունը, նրանց ստացած շատ արդյունքներ գնահատվեցին որպես մնայուն ավանդ արդի մաթեմատիկայում, կարճ ժամանակամիջոցում ձևավորվեց և ընդհանուր ճանաչում ստացավ ֆունկցիաների տեսության հայկ. գիտական դպրոցը:

Հետագա տարիներին հայ մաթեմատիկոսների գիտական հետաքրքրությունների շրջանակներն ընդարձակվել են՝ ընդգրկելով ֆունկցիաների ընդհանուր տեսության շատ հարցեր և մաթեմատիկայի այլ բաժիններ (տես *Մաթեմատիկա* հոդվածը ՀՍՍՀ-ին նվիրված հատորում):

Հայաստանում մաթ. գիտությունների զարգացման գործում մեծ վաստակ ունեն ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոսներ Ա. *Շահինյանը*, Մ. *Ջրբաշյանը*, Ս. *Մերգելյանը*, թղթակից անդամներ Ռ. *Ալեքսանդրյանը*, Ա. *Թալալյանը*, Ն. *Առաքելյանը* և շատ ուրիշներ:

*Գրկ.* Պետրոսյան Գ. Բ., Մաթեմատիկան Հայաստանում հին և միջին դարերում, Ե., 1959: Գիտությունը Հայաստանում 50 տարում, Ե., 1973, էջ 263—317: Колмогоров А. Н., Математика, БСЭ, 2 изд., т. 26, М., 1954; Цейтен Г. Г., История математики..., М.—Л., 1938; Клейн, Лекции о развитии математики в XIX столетии, М.—Л., 1937; Бурбаки Н., Очерки по истории математики, М., 1963; Стройк Д. Я., Краткий очерк истории математики, М., 1969; Выгодский М. Я., Арифметика и алгебра в древнем мире, 2 изд., испр. и доп., М., 1967; Юшкевич А. П., История математики в средние века, М., 1961; Рыбников К. А., История математики, т. 1—2, М., 1960—63; Гнеденко Б. В., Очерки по истории математики в России, М.—Л., 1946; Математика в СССР за сорок лет, т. 1—2, М.—Л., 1959; История отечественной математики, т. 1—4, Киев, 1968—70.

*Վ. Սաղաթելյան*

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ԱՂՅՈՒՍԱԿՆԵՐ**, կարևոր օժանդակ միջոցներ հաշվումների համար: Մ. ա-ի օրինակներ են բազմապատկման ($y=x_1 \cdot x_2$), եռանկյունաչափական ֆունկցիաների (օրինակ, $y=\sin x$), լոգարիթմների ($y=\lg x$) աղյուսակները: Մ. ա. օգտագործվում են ամենուր, որտեղ անհրաժեշտ է գործ ունենալ հաշվումների հետ՝ մաթեմատիկայում, ֆիզիկայում, քիմիայում, աստղագիտությունում, տեխնիկայում ևն: Սովորաբար Մ. ա. կազմվում են $y=f(x_1,\ldots,x_n)$ ֆունկցիաների արժեքներից՝ հաշված փոփոխականների որոշակի $(x_1,\ldots,x_n)_k$, ($k=1,2,\ldots,N$) արժեքների դեպքում: Եթե որևէ $(x_1,\ldots,x_n)$ չկա աղյուսակում, ապա ֆունկցիայի արժեքն այդ կետում որոշում են միջարկման միջոցով (տես *Միջարկում և արտարկում*): Մ. ա. բնութագրվում են ճշգրտության աստիճանով (ֆունկցիայի արժեքի ստույգ թվանշանների քանակով), արգումենտի փոփոխման դիապազոնով, քայլով (արգումենտի հարևան արժեքների տարբերությամբ): Մ. ա. կազմելիս անհրաժեշտ է լուծել երկու հիմնական հարց. ա. աղյուսակի կառուցվածքը (այսինքն փոփոխականների դիապազոնի և այն արժեքների ընտրությունը, որոնց համար պետք է հաշվել ֆունկցիայի արժեքները), նյութի տեղաբաշխումը, աղյուսակից օգտվելու հարցը ևն, բ. ֆունկցիայի արժեքների հաշվումը:

Առաջին Մ. ա. ստեղծվել են վաղ անցյալում: Բաբելոնում, օրինակ, դեռևս մ. թ. 2000 տարի առաջ օգտագործում էին բնական թվերի բազմապատկման, ինչպես նաև $1/n$, $n^2$, $n^3$, $n^3+n^2$ տեսքի թվերի աղյուսակներ ևն: *Տրանսցենդենտ ֆունկցիաների* առաջին աղյուսակները ստեղծվել են Հին Հունաստանում՝ կապված աստղագիտության զարգացման և դիտումներից կուտակված տվյալների մաթ. մշակման անհրաժեշտության հետ: Պտղոմեոսի (II դ.) «*Ալմագեստ*» աշխատությունը պարունակում է մեզ հասած առաջին եռանկյունաչափական աղյուսակները: Թվաբանական գործողություններ կատարելու մեզ հասած ամենահին աղյուսակներ են պարունակվում *Անանիա Շիրակացու* թվաբանությանը վերաբերող աշխատանքում: Եվրոպայում մեծ թվով աղյուսակներ ստեղծվել են Վերածնության դարաշրջանում, XV—XVII դդ., որը բացատրվում է բնագիտության բուռն զարգացմամբ: XIX դ. ստեղծվեցին *հատուկ ֆունկցիաների* աղյուսակներ: Հաշվողական տեխնիկայի զարգացումը XX դ. հնարավորություն ընձեռեց անհամեմատ ավելացնել Մ. ա-ի թե՛ քանակը, թե՛ ընդգրկող նյութի բազմազանությունը:

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ԱՆԱԼԻԶ**, մաթեմատիկայի որոշ բաժինների համախմբություն՝ նվիրված անվերջ փոքրերի մեթոդով ֆունկցիաների ուսումնասիրությանը: Մ. ա. սիստեմավորված տեսքով կազմավորվել է Ի. Նյուտոնի, Գ. Լայբնիցի, Լ. Էյլերի, ինչպես նաև XVII—XVIII դդ. ուրիշ մաթեմատիկոսների աշխատանքների շնորհիվ: Տրամաբանորեն դժվար է սահմանազծել Մ. ա-ի ուսումնասիրության ոլորտները:

«Մ. ա.» տերմինը ավելի շուտ ուսումնական բնույթ է կրում. ՍՍՀՄ-ում Մ. ա-ի դասընթացը իր մեջ ներառում է հետևյալ բաժինները. անալիզի ներածություն (ֆունկցիա, սահման, անընդհատություն), *դիֆերենցիալ հաշիվ* և *ինտեգրալ հաշիվ*, *շարքեր* (ներառյալ Ֆուրիեի):

Մ. ա-ի դասավանդման մեջ էլ ավելի են ներթափանցում *ֆունկցիոնալ անալիզի* և *տոպոլոգիայի* գաղափարներ:

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆ**, *ֆիզիկական աշխարհագրության* բաժին, որտեղ տրվում են տեղեկություններ Երկրի (որպես մոլորակ) ձևի, մեծության և շարժման մասին: Քննարկում է աշխարհագրական կոորդինատների նկատմամբ Երկրի յուրաքանչյուր կետի դիրքի որոշման և դրա հետ կապված ժամանակի հաշվարկումների եղանակները: Լայն կիրառություն ունի *քարտեզագրության* և *գեոդեզիայի* մեջ: Մ. ա-յան համապատասխան բաժինները շարադրվում են աստղագիտության, գեոդեզիայի և ընդհանուր երկրագիտության դասընթացներում:

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ԵՎ ՆԱՎԱՐԿԱՅԻՆ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴՊՐՈՑ**, ռազմածովային նավատորմի մասնագետներ, նավաշինարարներ, գեոդեզիստներ, ինժեներներ պատրաստող ուսումնական հաստատություն: Հիմնել է Պետրոս I, 1701-ին, Մոսկվայում: Ավարտողները նշանակվում էին նաև ուսուցիչներ հաշվային, հրետանային, ինժեներական և այլ դպրոցներում, քաղաքացիական հիմնարկներում աշխատում որպես աստիճանավորներ: Ընդունվում էին բոլոր դասերի (բացի ճորտ գյուղացիներից) 12—20 տարեկան դեռահասներն ու պատանիները: Ուսուցման դասընթացը բաղկացած էր երեք աստիճանից՝ դասարաններից կամ դպրոցներից: Տարրական (ռուսերենի) դպրոցում սովորում էին ընթերցանություն, գրարվեստ, քերականության և թվաբանության հիմունքները, հաշվային (թվաբանական) դպրոցում՝ թվաբանություն, երկրաչափություն, եռանկյունաչափություն, բարձրագույն (նավագնացության) դասարաններում՝ մաթեմատիկական աշխարհագրություն, աստղագիտություն, գծագրություն, գեոդեզիա, նավագնացություն ևն:

1703-ին ուներ 300, 1711-ին՝ 500 սովորող: 1715-ին նավագնացության դասարանները տեղափոխվել են Պետերբուրգ, և նրանց հիման վրա ստեղծվել է ծովային ակադեմիան: Տարրական և հաշվային դասարանները շարունակել են գործել Մոսկվայում, որպես նոր ակադեմիայի նախապատրաստական դասարաններ: Փակվել է 1752-ին:

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ԼԵԶՎԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, լայն առումով՝ լեզվաբանական մեթոդների համակարգ (լեզվամաթեմատիկա), որի օգնությամբ ուսումնասիրվում են լեզվական առարկաներն (օբյեկտները) ու երևույթները՝ լեզվական, լեզվաբանական ու անդրլեզվաբանական կաղապարների կիրառմամբ, նեղ առումով՝ մաթեմատիկայի հատուկ բնագավառ, որն զբաղվում է այդ կաղապարների կառուցման ու նկարագրման համար ձևային մեթոդների մշակմամբ:

Մ. լ-յան ծնունդը (XX դ. 50-ական թթ.) պայմանավորված է լեզվաբանական նորագույն ուղղությունների (մասնավորապես, կառուցվածքային լեզվաբանության) առաջացմամբ, որոնք, հիմք ընդունելով լեզվի համակարգ լինելու գաղափարը, խնդիր դրեցին հասնելու նրա ճշգրիտ նկարագրությանը: Ամեն մի համակարգի ուսումնասիրություն պահանջում է պարզել՝ 1. նրա տարրական միավորները, 2. այդ միավորների պատկանելությունը, 3. դրանց համակարգման կանոնները՝ վերլուծության տարբեր մակարդակներում:

Մ. լ-յան մեջ օգտագործվում են երեք կարգի կաղապարներ. 1. լեզվական, որոնք դիտարկում են լեզվական կոնկրետ պրոցեսներն ու երևույթները, նմանակում մարդու խոսքային գործունեությունը, 2. լեզվաբանական, որոնք դիտարկում են այս կամ այն լեզվական երևույթները բացահայտող ընթացակարգերը և նմանակում լեզվաբանի գործունեությունը, 3. անդրլեզվաբանական, որոնք դիտարկում են արդեն մշակված լեզվաբանական կաղապարներ: Այս առումով անդրլեզվաբանական կաղապարը տեսության տեսություն է կամ անդրտեսություն. սա հնարավորություն է տալիս նախօրոք մշակված հայտանիշերի ու տեսական ապացույցների (անդրլեզու կամ *մետալեզու*) հիման վրա տրված կաղապարներից ընտրել լավագույնը: Կաղապարման էությունը պարզաբանենք ամենից ավելի տարածված լեզվաբանական կաղապարների հիման վրա: Սրանք բաժանվում են երկու խմբի՝ ա. վերլուծության կաղապարներ, որոնք հնարավորություն են տալիս վերջավոր թվով կանոնների օգնությամբ վերլուծության ենթարկել տվյալ լեզվի նախադասությունները՝ անվերջ բազմությամբ, բ. համադրության կաղապարներ, որոնք հնարավորություն են տալիս վերջավոր թվով կանոնների օգնությամբ սերել (կազմել) որևէ լեզվի նախադասություններ անվերջ բազմությամբ:

Յուրաքանչյուր կաղապարի հիմքում ընկած է որևէ ձևային քերականություն, որը վերջավոր թվով օբյեկտների և այդ օբյեկտների նկատմամբ վերջավոր թվով գործողությունների, մասնավորապես, արտածման կանոնների հավաքածու է:

Վերլուծության կաղապարները հենվում են առաջին հերթին անմիջական բաղադրիչների կամ շարահյուսական կախումների, իսկ համադրության կաղապարները՝ սերող ձևային քերականությունների վրա: Անմիջական բաղադրիչների ձևային քերականությունը նկատի ունի այն փաստը, որ նախադասության մեջ կարելի է անջատել բառախմբեր, որոնք կատարում են մեկ բառի շարահյուսական ֆունկցիա: Այսպես, նախադասության անմիջական բաղադրիչներն են անվանական ու բայական բառախմբերը, որոնց շարահյուսական ֆունկցիաները համապատասխանաբար համընկնում են ենթակայի ու ստորոգյալի շարահյուսական ֆունկցիաների հետ: Անվանական բառախմբի մեջ կարելի է առանձնացնել բաղադրիչներ, որոնց շարահյուսական ֆունկցիաները կհամընկնեն ենթակայի (գոյականի) ու որոշիչի շարահյուսական ֆունկցիաների հետ ևն:

Շարահյուսական կախումների ձևային քերականության համար հիմք է ծառայում նախադասության մեջ բառերի անմիջական շարահյուսական կախման առկայությունը:

Օրինակ, ընդունված է, որ նախադասության մեջ ենթական շարահյուսորեն անմիջապես կախման մեջ է գտնվում ստորոգյալից, խնդիրներն ու պարագաները՝ ստորոգյալից (անմիջապես կամ կապի միջոցով), ենթակայի լրացումը՝ ենթակայից ևն:

Թե՛ անմիջական բաղադրիչների և թե՛ շարահյուսական կախումների քերականության միջոցով կատարված վերլուծությունը կարելի է պատկերել լեզվական տարբեր կարգի միավորների ծառաձև միացությունների տեսքով: Առաջին դեպքում այն կոչվում է անմիջական բաղադրիչների ծառ, իսկ երկրորդ դեպքում՝ կախումների ծառ: Օրինակ, **երիտասարդ երկրաբանները գնացին դեպի հանքերը** նախադասության անմիջական բաղադրիչների և կախումների ծառերը կունենան հետևյալ տեսքը՝




Գծ. 1




Գծ. 2

Անմիջական բաղադրիչների ծառի վրա (տես գծ. 1) պարզ երևում է, որ նախադասությունը կազմում են երկու բաղադրիչներ՝ անվանական բառախումբը (**երիտասարդ երկրաբանները**) և բայական բառախումբը (**գնացին դեպի հանքերը**). անվանական բառախումբը կազմված է **երիտասարդ** և **երկրաբանները** բառերից, իսկ բայական բառախումբը՝ **գնացին** բայից և անվանական բառախմբից (**դեպի հանքերը**), որն իր հերթին կազմված է **դեպի** և **հանքերը** բառերից:

Կախվածությունների ծառի սկզբնակետը համապատասխանում է նախադասության ստորոգյալին: Երկրորդ գծագրից երևում է, որ տրված նախադասության ստորոգյալից անմիջական շարահյուսական կախման մեջ են գտնվում ենթական (երկրաբանները) և կապը (դեպի), ենթակայից անմիջական կախման մեջ է գտնըվում նրա լրացումը (երիտասարդ), իսկ կապից՝ պարագան (հանքերը):

Սերող քերականությունը, որի հիման վրա կառուցվում են համադրության կաղապարներ, հնարավորություն է ընձեռում միակերպ ընթացակարգերի օգնությամբ կազմելու տվյալ լեզվին հատուկ նախադասություններ: Ընդհանուր տեսքով սերող քերականությունը դիտարկվում է որպես $<\Sigma, F>$ համակարգ, որտեղ Σ-ն լեզվական միավորների վերջավոր բազմություն է, իսկ F-ը՝ $\psi \rightarrow \varphi$ տեսքի արտածման կանոնների վերջավոր բազմություն: Արտածման կանոնների $\psi \rightarrow \varphi$ տեսքը ցույց է տալիս, որ սերման ընթացքում սլաքի ձախակողմյան միավորը փոխարինվում է աջակողմյան միավորով: Քանի որ Σ բազմության մեջ ներառվում են ոչ ծայրագույն միավորներ (որոնք համապատասխանում են բառախմբերին) և ծայրագույն միավորներ (որոնք համապատասխանում են առանձին բառերին), ապա նախադասության սերման պրոցեսը կավարտվի, եթե սերված բառաշղթան բաղկացած լինի միայն ծայրագույն միավորներից, այսինքն՝ առանձին բառերից:

Եթե որպես Σ բազմության տարրեր ընտրենք S (նախադասություն), VP (բայական բառախումբ), NP (անվանական բառախումբ), N (գոյական), V (բայ), A (ածական), C (կապ), **երկրաբանները**, **հանքերը**, **գնացին**, **երիտասարդ**, **դեպի** միավորները, իսկ որպես F բազմության տարրեր՝ S→NPVP, NP→AN, NP→CN, VP→VNP, N→երկրաբանները, N→հանքերը, A→երիտասարդ, C→դեպի արտածման կանոնները, ապա **երիտասարդ երկրաբանները գնացին դեպի հանքերը** նախադասությունը կարելի է բերել հետևյալ կերպ՝




Գծ. 3

Էլեկտրոնային հաշվողական մեքենաների ստեղծումից հետո Մ. լ-յան հիմքի վրա ծագեց ու զարգացավ, այսպես կոչված, հաշվողական լեզվաբանությունը: Հաշվողական լեզվաբանության ուսումնասիրության հիմնական օբյեկտը արհեստական լեզուներն են, որոնք լայնորեն օգտագործվում են խնդիրների ծրագրավորման համար, ապահովում մարդու և հաշվողական մեքենայի երկխոսությունը: Հաշվողական լեզվաբանությունը նոր հեռանկարներ է բացում հաշվողական մեքենաների արդյունավետության բարձրացման ու կիրառման ոլորտի ընդարձակման համար:


*Գրկ.* Ուռուտյան Ռ. Լ., Կիբեռնետիկան և լեզվաբանությունը, Ե., 1978: Гладкий А. З., Формальные грамматики и языки, М., 1973; Джаукян Г. Б., Общее и армянское языкознание, Е., 1978.


*Ռ. Ուռուտյան*

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ԾՐԱԳՐԱՎՈՐՈՒՄ**, մաթեմատիկայի կիրառական բաժիններից. ուսումնասիրում է օպտիմալացման խնդիրների որոշակի տեսակների առանձնահատկությունները, մշակում դրանց լուծման տեսական հիմունքներ և արդյունավետ հաշվողական մեթոդներ: Օպտիմալ պլանավորման և կառավարման, ինչպես նաև ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների մի շարք խնդիրներ մաթեմատիկորեն ձևակերպելիս բերվում են Մ. ծ-ման խնդիրներին: Վերջիններս ձևակերպվում են հետևյալ կերպ՝ գտնել $x_1, x_2, \ldots, x_n$ փոփոխականների այնպիսի թվային արժեքներ, որոնք էքստրեմումի (մինիմումի կամ մաքսիմումի) հասցնեն $f(x_1, x_2, \ldots, x_n)$ ֆունկցիայի (կոչվում է նպատակային ֆունկցիա) արժեքը

$$g_i(x_1, x_2, \ldots, x_n) \geqslant 0; \quad i=1,2,\ldots, m_1, \qquad (1)$$
$$g_i(x_1,x_2,\ldots,x_n)=0; \quad i=m_1+1, m_1+2, \ldots, m \qquad (2)$$

սահմանափակումների առկայությամբ: n-չափանի տարածության այն $(x_1, x_2, \ldots, x_n)$ կետը, որը բավարարում է (1) և (2) սահմանափակումներին, կոչվում է խնդրի պլան կամ թույլատրելի լուծում: Այն պլանը, որի դեպքում $f(x_1, x_2, \ldots, x_n)$ նպատակային ֆունկցիան ընդունում է իր էքստրեմալ արժեքը, կոչվում է օպտիմալ պլան կամ օպտիմալ լուծում: Մ. ծ. ունի մի շարք բաժիններ, որոնց զգալի մասն արդեն հասել են զարգացման բարձր մակարդակի և ձևավորվել որպես ինքնուրույն առարկաներ: Այն խնդիրները, որոնցում $f(x_1, x_2, \ldots, x_n)$ և $g_i(x_1, x_2, \ldots, x_n)$ ֆունկցիաները գծային են, ուսումնասիրում է գծային ծրագրավորման տեսությունը: Վերջինս Մ. ծ-ման առավել հանգամանորեն մշակված բաժինն է, որի ընդհանուր խնդրի և նրա առանձին մասնավոր տեսքերի համար մշակվել են մի շարք ճշգրիտ և մոտավոր մեթոդներ: Ըստ այդմ էլ գծային ծրագրավորման շրջանակներում ստեղծվել են նոր ուղղություններ. պարամետրական ծրագրավորում (ուսումնասիրում է այնպիսի խնդիրներ, որոնցում սկզբնական տվյալները կամ նրանց մի մասը կախված են խնդրի անհայտների հետ կապ չունեցող պարամետրերից, ամբողջ-թվային (դիսկրետ կամ կոմբինատորային) ծրագրավորում (ուսումնասիրում է այնպիսի խնդիրներ, որոնցում փոփոխականների կամ նրանց մի մասի վրա դրվում է ամբողջ թիվ լինելու լրացուցիչ պայման), ստոխաստիկական ծրագրավորում (ուսումնասիրում է այնպիսի խնդիրներ, որոնցում սկզբնական տվյալները, ամբողջությամբ կամ մասնակիորեն, պատահական մեծություններ են) ևն:

Այն խնդիրները, որոնցում $f(x_1, x_2, \ldots, x_n)$ և $g_i(x_1, x_2, \ldots, x_n)$ ֆունկցիաներից գոնե մեկը գծային չէ, ուսումնասիրում է ոչ գծային ծրագրավորումը: Վերջինս իր հերթին բաժանվում է ուռուցիկ և ոչ ուռուցիկ ծրագրավորման բաժինների: Ուռուցիկ ծրագրավորումը ուսումնասիրում է այնպիսի խնդիրներ, որոնցում պահանջվում է գտնել ուռուցիկ բազմության վրա ուռուցիկ ֆունկցիայի առավելագույն (կամ գոգավոր ֆունկցիայի նվազագույն) արժեքը:

Ուռուցիկ ծրագրավորման խնդիրներն օժտված են այն հատկությամբ, որ յուրաքանչյուր տեղային (լոկալ) մաքսիմում միաժամանակ տվյալ բազմության վրա ֆունկցիայի ընդունած արժեքներից ամենամեծն է: Ուռուցիկ ծրագրավորման ամենից հանգամանորեն մշակված բաժինը քառակուսային ծրագրավորումն է, որի շրջանակներում ուսումնասիրվող խնդիրների սահմանափակումները գծային են, իսկ նպատակային ֆունկցիան՝ քառակուսային: Ոչ ուռուցիկ ծրագրավորման շրջանակներում արդեն ձևավորվել է երկրաչափական ծրագրավորումը, որն ուսումնասիրում է այնպիսի խնդիրներ, որոնցում $f(x_1, x_2, \ldots, x_n)$ և $g_i(x_1, x_2, \ldots, x_n)$ ֆունկցիաները դրական արժեքներ ընդունող որոշակի աստիճանային ֆունկցիաներ են: Ներկայումս մշակված են երկրաչափական ծրագրավորման բավականաչափ լայն դասի խնդիրների լուծման մեթոդներ:

Մ. ծ-ման շատ խնդիրներ բազմափուլ են: Նման խնդիրներն ուսումնասիրում է դինամիկական ծրագրավորումը, որի մեթոդները հնարավորություն են ընձեռում բավական մեծ ճշտությամբ լուծել հեռանկարային պլանավորման խնդիրներ:

*Գրկ.* Հ ա ր ու թ յ ու ն յ ա ն Ա. Գ., Գծային ծրագրավորումը և նրա մի քանի կիրառությունները, Ե., 1967:

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՀՈՐԻԶՈՆ**, տես *Երկնային կոորդինատների համակարգեր*:

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՄԵԹՈԴՆԵՐ ՏՆՏԵՍԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՄԵՋ**, տնտեսական երևույթների և պրոցեսների քանակական վերլուծության մեթոդներ, որոնք կիրառվում են ժող. տնտեսության պլանավորման և արտադրության կառավարման մեջ: Բաժանվում են երկու կարգի: Մեթոդների ա ռ ա ջ ի ն կ ա ր գ ն օգտագործվում է ժողտնտեսության և (կամ) նրա առանձին ստորաբաժանումների զարգացման մակրոմոդելների, տնտ. համակարգի գործելակերպի կանխատեսման և սոցիալ-տնտ. գործոնների հաշվառման սխեմաների, արտադրության, փոխանակության, սպառման, գնագոյացման և տեխ. առաջընթացի մոդելների կառուցման ու որակական վերլուծության համար ևն: Այս կարգի մեթոդներն ու մոդելները որոշվում են քաղաքատնտեսության հիմնական դրույթներով: Մեթոդների ե ր կ ր ո ր դ կ ա ր գ ը կիրառվում է ներգործարանային, ճյուղային, ժողովրդատնտեսական կոնկրետ խնդիրներ լուծելու համար, որոնցում պահանջվում է կազմել արտադրության պլան, ռեսուրսների օգտագործման գրաֆիկ, բեռների տեղափոխման սխեմա, տարբեր հաշվեկշիռներ, հավաքել և մշակել տնտ. ինֆորմացիա, որոշակի չափանիշներից ելնելով համեմատել և գնահատել տարբեր նախագծեր, կանխատեսել այս կամ այն միջոցառման տնտ. հետևանքները ևն: Այս խնդիրների լուծման համար օգտագործվող մեթոդներն անվանվում են տնտեսամաթեմատիկական:

Տնտ. համակարգի վիճակագրական տվյալների մշակումն ու վերլուծությունն իրականացվում է *մաթեմատիկական վիճակագրության* մեթոդներով: Վիճակագրական տվյալներն օբյեկտի (երևույթի) բազմակի դիտումների արդյունքներ են, որոնք կազմում են համասեռ համախումբ:

Մաթ. մեթոդները տնտեսագիտության մեջ ներկայացվում են կիրառական մաթեմատիկայի հետևյալ բաժիններով. *մաթեմատիկական ծրագրավորում*, *խաղերի տեսություն*, *մասսայական սպասարկման տեսություն*, պաշարների կառավարման տեսություն ևն: Մաթ. ծրագրավորումը մշակում է փոփոխականների թույլատրելի տիրույթի սահմանափակումներով բազմաչափ էքստրեմալ խնդիրների տեսությունը և թվային մեթոդները: Տնտեսության պլանավորման և կառավարման խնդիրները սովորաբար բերում են թվերի այնպիսի համախմբի ընտրությանը, որոնք որոշակի նպատակային ֆունկցիային տալիս են էքստրեմալ արժեք՝ փոփոխական որոշակի սահմանափակումների պայմաններում: Ֆունկցիայի հատկություններից և սահմանափակումներից կախված, մաթ. ծրագրավորման խնդիրները բաժանվում են գծայինի և ոչ գծայինի: Գծային ծրագրավորման խնդիրներն ունեն գծային նպատակային ֆունկցիա և սահմանափակումներ՝ գծային անհավասարությունների և հավասարումների տեսքով: Սահմանափակումներում և (կամ) նպատակային ֆունկցիայում գծայնության խախտումը բերում է ոչ գծային ծրագրավորման խնդրին: Մաթ. ծրագրավորման պայմանական էքստրեմումի այն խնդիրները, որոնց պայմաններում կան պատահական պարամետրեր, անվանվում են ստոխաստիկ ծրագրավորման խնդիրներ: Օպտիմալացման դաս են կազմում դիսկրետ կամ ամբողջական ծրագրավորման խնդիրները, որոնցում փոփոխականների փոփոխման տիրույթը բաղկացած է առանձին կետերից: Մաթ. ծրագրավորման առանձին խնդիրներ (օրինակ, տրանսպորտային) կիրառվում են ցանցային պլանավորման և կառավարման մեջ, որոնց միջոցով ժողտնտեսության տարբեր ճյուղերի համար կազմվում են ընթացիկ (օպերատիվ) և հեռանկարային պլաններ:

Մաթ. ծրագրավորման երկակիության տեսությունն ուսումնասիրում է օպտիմալացման մեխանիզմի տարբեր կողմերը բնութագրող երկակի կամ փոխկապակցված խնդիրների զույգի կապը: Այդ տեսության հետևությունները թույլ են տալիս արտադրության օպտիմալ պլանը համադրել արտադրական գործոնների գնահատումների համակարգի հետ: Երկակիության տեսությունը սերտորեն կապված է խաղերի տեսության հետ, որը բացահայտում է գործելակերպի այս կամ այն իմաստով օպտիմալ ստրատեգիան՝ կոնֆլիկտային (երբ բախվում են տարբեր նպատակների ձգտող երկու կամ ավելի կողմերի շահերը) կամ անորոշ իրադրություններում: Մասսայական սպասարկման տեսությունն ուսումնասիրում է վիճակագրական օրինաչափությունները մեծ թվով համասեռ տարրական մասսայական բնույթ կրող օպերացիաներում՝ սպասարկման իրական համակարգերի հավանական մոդելների միջոցով: Տնտեսագիտական հետազոտություններում հաճախ կիրառվում է պաշարների (պահանջարկ ներկայացնող որոշակի ռեսուրսի) կառավարման տեսությունը, որը մշակում է արտադրության կամ մթերումների մակարդակի հաշվառման մեթոդներ՝ ապագա պահանջարկի (ոչ միշտ որոշակի) ռացիոնալ բավարարման համար: Մաթ. մեթոդներով լուծվում են նաև օրացուցային պլանավորման, սարքավորման մաշվածքի ու փոխարինման ևն խնդիրներ: Դրանք այժմ կիրառվում են նաև ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս Լ. Ս. *Պոնտրյագինի* խմբի մշակած օպտիմալ պրոցեսների մաթ. տեսության միջոցով:

*Գրկ.* Применение математики в экономических исследованиях, т. 1—3, М., 1959—1965.

Հ. *Սարգսյան*

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ** գ ի տ ա հ ե տ ա զ ո տ ա կ ա ն (ՄՄԳՀԻ), էլեկտրոնային հաշվողական տեխնիկայի խոշոր գիտական կենտրոն Երևանում: Հիմնադրվել է 1956-ին: Ինստ-ում կատարվող աշխատանքների հիմնական ուղղությունն է էլեկտրոնային հաշվողական մեքենաների (ԷՀՄ) նախագծումը և արտադրումը (ինստ-ին կից փորձնական գործարանում): ՄՄԳՀԻ-ում մշակված առաջին ԷՀՄ-ներից են «Արագած» և «Երևան» առաջին սերնդի մեքենաները (1960): 1959-ից սկսվեցին կիսահաղորդչային ուժեղացուցիչներով երկրորդ սերնդի մեքենաների ստեղծման աշխատանքները: 60-ական թթ. մշակվեցին և արտադրության մեջ ներդրվեցին «*Հրազդան*» և «*Նաիրի*» անվանաշարի առաջին մեքենաները, 1971-ին՝ տոմսա-դրամարկղային գործողությունների ավտոմատացման համար նախատեսված «Մարշրուտ-1» հատուկ ԷՀՄ: 1970-ական թթ. ստեղծվեց ինտեգրալային միկրոսխեմաներով երրորդ սերնդի մեքենաների մի շարք («Նաիրի-3», «Նաիրի-3—1», «Նաիրի-3—2», «Նաիրի-4»): ՄՄԳՀԻ զգալի ավանդ է ներդրել ԷՀՄ-ների «Ռյադ» միասնական համակարգի մոդելների ստեղծման գործում: Այդ անվանաշարի ամենահայտնի մեքենաներից են ինստ-ում ստեղծված «ԵՍ-1030» և «ԵՍ-1045» ԷՀՄ-ները: «Նաիրի» ընտանիքի փոքր ԷՀՄ-ների բազայի վրա 1976-ից սկսվեց ավտոմատացված աշխատատեղերի մշակման նոր ուղղության զարգացումը:

ՄՄԳՀԻ ունի ասպիրանտուրա և թեկնածուական ատեճան շնորհող մասնագիտացված գիտական խորհուրդ (1970-ից):

Վ. *Կարապետյան*

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՆՇԱՆՆԵՐ**, պայմանանշաններ, որոնք նախատեսված են մաթեմատիկական օբյեկտներ, հասկացություններ և առաջադրություններ գրառելու համար: Օրինակ, $\sqrt{2}$ (քառակուսի արմատ երկուսից), $3>2$ (երեքը մեծ է

Որոշ մաթեմատիկական նշանների ստեղծման տարեթվերը և հեղինակները

| Նշանը | Իմաստը | Ստեղծողը | Ստեղծման տարեթիվը |
|---|---|---|---|
| $\infty$ | անվերջություն | Ջ. Վալիս | 1655 |
| e | բնական լոգարիթմների հիմքը | Լ. Էյլեր | 1736 |
| $\pi$ | շրջանագծի երկարության հարաբերությունը տրամագծին | Ու. Ջոնս | 1706 |
| i | քառակուսի արմատ —1-ից | Լ. Էյլեր | 1777 (տպագրվել է 1794-ին) |
| $\bar{i}, \bar{j}, \bar{k}$ | միավոր վեկտորներ | Ու. Համիլտոն | 1853 |
| a, b, c<br>x, y, z | հաստատուն կամ տրված մեծություններ<br>փոփոխական կամ անհայտ մեծություններ | Ռ. Դեկարտ | 1637 |
| $=$ | հավասարություն | Ռ. Ռեկորդ | 1557 |
| $>$<br>$<$ | մեծ է<br>փոքր է | Տ. Հարիոտ | 1631 |
| $\equiv$ | համեմատելիություն | Կ. Գաուս | 1801 |
| $\parallel$ | զուգահեռություն | Ու. Օութրեդ | 1677 |
| $\perp$ | ուղղահայացություն | Պ. Էրիգոն | 1634 |
| $+$<br>$-$ | գումարում<br>հանում | գերմանացի մաթեմատիկոսներ | XV դ. վերջ |
| $\times$ | բազմապատկում | Ու. Օութրեդ | 1631 |
| $\cdot$ | բազմապատկում | Գ. Լայբնից | 1698 |
| : | բաժանում | Գ. Լայբնից | 1684 |
| $a, a^3, \ldots, a^n$ | աստիճաններ | Ռ. Դեկարտ<br>Ի. Նյուտոն | 1637<br>1676 |
| $\sqrt{\ }, \sqrt[3]{\ }$ | արմատներ | Ք. Ռուդոլֆ<br>Ա. Ժիրար | 1525<br>1629 |
| Log<br>log | լոգարիթմ | Յո. Կեպլեր<br>Բ. Կավալիերի | 1624<br>1632 |
| sin<br>cos | սինուս<br>կոսինուս | Լ. Էյլեր | 1748 |
| tg | տանգենս | Լ. Էյլեր | 1753 |
| arcsin | արկսինուս | Ժ. Լագրանժ | 1772 |
| Sh<br>Ch | հիպերբոլական սինուս<br>հիպերբոլական կոսինուս | Վ. Ռիկատի | 1757 |
| $dx, d^2x, \ldots$ | դիֆերենցիալ | Գ. Լայբնից | 1675 (տպագրվել է 1684-ին) |
| $\int y dx$ | ինտեգրալ | Գ. Լայբնից | 1675 (տպագրվել է 1686-ին) |
| $\frac{d}{dx}$ | ածանցյալ | Գ. Լայբնից | 1675 |
| $f'_x, y', f'(x)$ | ածանցյալ | Ժ. Լագրանժ | 1770, 1779 |
| $\frac{\partial}{\partial x}$ | մասնական ածանցյալ | Ա. Լեժանդր | 1786 |
| $\Delta x$ | տարբերություն | Լ. Էյլեր | 1775 |
| $\int_a^b f(x) dx$ | որոշյալ ինտեգրալ | Ժ. Ֆուրիե | 1819—22 |
| $\Sigma$ | գումար | Լ. Էյլեր | 1775 |
| $\Pi$ | արտադրյալ | Կ. Գաուս | 1812 |
| ! | ֆակտորիալ | Կ.Կրամպ | 1808 |
| $\|x\|$ | մոդուլ | Կ. Վայերշտրաս | 1841 |
| lim<br>$\lim_{n=\infty}$<br>$\lim_{n\to\infty}$ | սահման | Ս. Լյուիլյե<br>Ու. Համիլտոն<br>ուրիշ մաթեմատիկոսներ | 1786<br>1853<br>XX դ. սկիզբ |
| $\varphi x$<br>$f(x)$ | ֆունկցիա | Ի. Բեռնուլի<br>Լ. Էյլեր | 1718<br>1734 |

երկուսից) են: Առաջին Մ. ն. եղել են թվերի գրառման նշանները՝ *թվանշանները*, որոնք, հավանաբար, ավելի վաղ ծագում ունեն, քան գրերը: Թվարկության առավել հին՝ բաբելոնական և եգիպտական համակարգերը ծագել են $3^1/_2$ հազարամյակ մ. թ. ա.: Կամայական մեծությունների Մ. ն. ստեղծվել են Հունաստանում բավական ուշ (սկսած V—IV դդ. մ. թ. ա.): Հանրահաշվական նշանագրությունը երևան է եկել XIV—XVII դդ.: Հանրահաշվական բանաձևերի ստեղծման գործում մեծ ավանդ ունեն Ֆ. *Վիետը* և Ռ. *Դեկարտը*: Դիֆերենցիալ և ինտեգրալ հաշվի նշանագրությունը ստեղծել է Գ. *Լայբնիցը*: Ժամանակակից մաթեմատիկայի նշանագրության ստեղծման գործում մեծ դեր է խաղացել Լ. *Էյլերը*:

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՊԱՊԻՐՈՒՍՆԵՐ**, Հին Եգիպտոսի մաթեմատիկական գիտության հուշարձաններ, վերաբերում են Միջին թագավորության շրջանին (մոտ XXI դ.— մոտ XVIII դ. մ. թ. ա.): Առավել հայտնի են Ռինդի և Մոսկովյան պապիրուսները:

Ռինդի պապիրուսը [տիրոջ՝ եգիպտագետ Գ. Ռինդի (Rhind) անունով. գտնվում է Բրիտանական թանգարանում (Լոնդոն)] առաջին անգամ ուսումնասիրել և գերմաներեն հրատարակել է Ա. Այզենլորը 1877-ին (այս պապիրուսը հայտնի է նաև Ահմեսի պապիրուս անունով՝ կազմող և գրիչ Ահմեսի անունով): Ռինդի պապիրուսն ընդգրկում է կիրառական բնույթի 84 խնդիրների լուծումներ, որոնք վերաբերում են կոտորակների նկատմամբ գործողություններին, ուղղանկյան, եռանկյան, սեղանի և շրջանի մակերեսների հաշվարկներին (որպես վերջինիս մակերես ընդունվում է տրամագծի 8/9-ին հավասար կողմով քառակուսու մակերեսը), ուղղանկյուն զուգահեռանիստի և գլանի ծավալների հաշվարկներին, պարունակում է նաև համեմատական բաժանման, հացահատիկի և նրանից ստացվող հացի կամ գարեջրի քանակական հարաբերության վերաբերյալ խնդիրներ: 79-րդ խնդրի լուծումը հանգում է երկրաչափական պրոգրեսիայի գումարի հաշվարկի: Սակայն այս բոլոր խնդիրների լուծման համար չի տրվում որևէ ընդհանուր կանոն և չի արվում որևէ տեսական ընդհանրացում:

Մոսկովյան պապիրուսը [գտնվում է Ա. Ս. Պուշկինի անվ. կերպարվեստի թանգարանում (Մոսկվա)] ուսումնասիրել են ռուս եգիպտագետներ Բ. Ա. Տուրաևը (1917) և Վ. Վ. Ստրուվեն (1927), ամբողջությամբ հրատարակվել է գերմաներեն (1930): Պարունակում է 25 խնդիր՝ նույն տիպի, ինչ Ռինդի պապիրուսի խնդիրներն են: Առանձնակի հետաքրքրություն են ներկայացնում 10 և 14-րդ խնդիրները: Առաջինում հաշվվում է կիսագլանի (կամ, հնարավոր է, կիսագնդի) կողմնային մակերևույթը: Սա մաթ. գրականության մեջ կոր մակերևույթի մակերես հաշվելու առաջին օրինակն է: Երկրորդ խնդրի լուծումը հիմնված է քառակուսի հիմքով հատած բուրգի ծավալի ճշգրիտ բանաձևի վրա: Մ. պ-ի ուսումնասիրությունը հնարավորություն է ընձեռում պատկերացում կազմելու Հին Եգիպտոսի մաթ. գիտելիքների մակարդակի մասին: Տես նաև *Եգիպտոս Հին*, *Տեխնիկան և գիտությունը* բաժինը:

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՍՊԱՍՈՒՄ**, *պատահական մեծության* կարևոր թվային բնութագրիչներից: $F_\xi(x)$ բաշխման ֆունկցիա ունեցող $\xi$ պատահական մեծության Մ. ս. է կոչվում

$$E_\xi = \int_{-\infty}^{\infty} x dF_\xi(x)$$

ինտեգրալը, եթե այն բացարձակ զուգամետ է: Դիսկրետ և անընդհատ պատահական մեծությունների Մ. ս-ներն են համապատասխանաբար՝

$$E\xi=\sum_k x_k P(\xi=x_k),\quad E\xi=\int_{-\infty}^{\infty} xp(x)dx,$$

որտեղ, $x_k$-երը ξ-ի հնարավոր արժեքներն են, p(x)-ը՝ ξ-ի *հավանականության խտությունը*: Մ. ս-ման հիմնական հատկություններն են. 1. EC=C, 2. E(Cξ)=CEξ, 3. E(ξ+η)=Eξ+Eη, 4. E(ξη)=EξEη, եթե պատահական մեծություններն անկախ են: Մ. ս. բնութագրում է պատահական մեծության արժեքների դասավորությունը: Մ. ս-ի այդ հատկությունը ըստ էության բացատրվում է *մեծ թվերի օրենքով*:

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ**, մաթեմատիկայի բաժին, որի նպատակն է վիճակագրական (տես *Վիճակագրություն*) դիտման մեթոդների մշակումը և վիճակագրական տվյալների համակարգումն ու վերլուծությունը: Մ. վ. սերտորեն կապված է *հավանականությունների տեսության* հետ: Մ. վ-յան հիմնական խնդիրներից է պատահական մեծությունների թվային բնութագրիչների (հավանականություն, բաշխման ֆունկցիա, մաթ. սպասում, դիսպերսիա ևն) գնահատման մեթոդների մշակումը: Սովորաբար, պատահական երևույթների ուսումնասիրման ժամանակ, այդ թվային բնութագրիչները լինում են անհայտ և պետք է գնահատվեն փորձի տվյալների, այսինքն՝ պատահական մեծության նըկատմամբ կատարած դիտումների արդյունքների հիման վրա: Հաճախ հայտնի է լինում դիտարկվող պատահական մեծության բաշխման ֆունկցիայի տեսքը, մինչդեռ նրա պարունակած պարամետրերի արժեքները լինում են անհայտ: Այդ պարամետրերի համար հնարավոր չափով ճիշտ և հուսալի գնահատականներ գտնելու խնդրով զբաղվում է բաշխման ֆունկցիաների պարամետրերի գնահատման բաժինը: Մ. վ-յան կարևոր բաժիններից է վիճակագրական հիպոթեզների (այսինքն՝ պատահական մեծության բաշխման ֆունկցիայի վերաբերյալ ենթադրությունների) ստուգման տեսությունը: Պատահական ազդակների ազդեցությամբ փոփոխվող մեծությունների միջև կախվածության հարցերն ուսումնասիրում է կոռելյացիայի տեսությունը: Մ. վ-յան ուսումնասիրությունների շրջանակները սրանով չեն սահմանափակվում. բնագիտության և տեխնիկայի զարգացումը մշտապես առաջադրում են նոր խնդիրներ, որոնց լուծումը հանգեցնում է Մ. վ-յան մեթոդների հետագա կատարելագործմանը:

Արդի Մ. վ-յան զարգացմանը էապես նպաստել են Ռ. Ֆիշերի, Յու. Նեյմանի, Ա. Վալդի, սովետական գիտնականներ Ա. Ն. Կոլմոգորովի, Ն. Վ. Սմիրնովի և այլոց աշխատանքները:

Գրկ. Крамер Г., Математические методы статистики, пер. с англ., М., 1948; Ван-дер-Варден Б. Л., Математическая статистика, пер. с нем., М., 1960; Смирнов Н. В., Дунин-Барковский И. В., Курс теории вероятностей и математической статистики для технических приложений, 3 изд., М., 1969.

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, մտածողության ձևերի մաթեմատիկական մոդելներ ուսումնասիրող գիտություն. Այլ տեսակետով՝ Մ. տ., ինչպես և *մետամաթեմատիկան*, շոշափում է մտածողության այնպիսի ձևեր, որոնք հանդիպում են մաթ. ապացույցներում: Երբեմն «Մ. տ.» գաղափարի մեջ ներառում են նաև Մ. տ-յանը առնչվող այլ մաթ. տեսություններ (բուլյան հանրահաշիվը, ալգորիթմների տեսությունը, ավտոմատների տեսությունը ևն): Մ. տ. ուսումնասիրում է *ձևայնացված լեզուներ* և համակարգեր (հաշիվներ, տեսություններ), հետազոտում է համակարգերի *անհակասականության*, *լրիվության*, բաղադրիչ ձևային կանոնների և աքսիոմների անկախության հարցերը, համապատասխան լեզուների հանրահաշվական հատկությունները, նրանց մեջ արտահայտվող դատողությունների ճշմարտության տարբեր ըմբռնումները, մասնավորապես, ելնելով հանրահաշվական, տոպոլոգիական, ալգորիթմական տեսակետներից (ընդ որում հանրահաշվական մոտեցման դեպքում օգտագործվում են *կավարի տեսության* եղանակները): Մ. տ. ուսումնասիրում է նաև ձևայնացված հաշիվներում տրամաբանական արտածումների վերակազմավորման, պարզեցման, մինիմիզացման եղանակները, արտածումների որոնման եղանակները հաշվողական մեքենաների օգնությամբ ևն:

Մ. տ-ում ուսումնասիրվող հաշիվները և տեսությունները տարբերվում են ըստ ձևայնացվող տրամաբանության բնույթի (դասական, կոնստրուկտիվ, մոդալ տրամաբանություն) և ըստ մակարդակի (*ասույթների տրամաբանություն*, *պրեդիկատների տրամաբանություն*): Պրեդիկատների տրամաբանությունում տարրական դատողությունը վերածվում է տրամաբանական սուբյեկտի (սուբյեկտների) և պրեդիկատի, մինչդեռ ասույթների տրամաբանությունում տարրական դատողությունը դիտվում է որպես անբաժանելի միավոր: Ասույթների հաշիվների ապարատի հիմքը կազմում են տրամաբանական գործողությունները՝ & («և»), V («կամ»), ¬ («ոչ»), → («բխում է»), պրեդիկատային հաշիվներում օգտագործվում են նաև ∀ («կամայական»), ∃ («գոյություն ունի»), որոշ հատուկ հաշիվներում՝ ◇ («հնարավոր է», □ («անհրաժեշտ է»), τ («այնպիսի») ևն գործողություններ: Մ. տ-ում ուսումնասիրվող ձևային տեսությունների գաղափարները և դատողություններն արտահայտվում են բանաձևերով, այսինքն՝ տվյալ տեսության ձևային նշանների որոշակի տիպի վերջավոր զուգակցություններով: Այդ նշանները կարող են արտահայտել տրամաբանական գործողություններ, տեսության օբյեկտների միջև տարրական գործողություններ (+, —, ·), տարրական հարաբերություններ (=, <), օժանդակ նպատակների համար մտցվում են նաև փակագծեր, փոփոխականներ: Այսպես, բնական թվերի թվաբանության մեջ «x-ը պարզ թիվ է» դատողությունը կարելի է արտահայտել հետևյալ բանաձևով՝ $(x>1\&\neg\exists_y\exists_z((1<y)\&(y<x)\&\&(y\cdot z=x)))$ (1), որը վերլուծվում է հետևյալ ձևով «x>1 և գոյություն չունեն այնպիսի y և z բնական թվեր, որ 1<<y<x և y·z=x»: Էվկլիդեսի թեորեմը պարզ թվերի քանակության անվերջության մասին արտահայտվում է $\forall_n\exists_x(n<<x\&P)$ բանաձևով, որտեղ P-ն վերը նըշված (1) բանաձևն է (բանաձևի վերլուծությունը՝ «կամայական n բնական թվի համար գոյություն ունի նրանից մեծ մի պարզ թիվ»): Ձևայնացված տեսության մեջ տրամաբանական արտածումները բանաձևերի վերջավոր հաջորդականություններ են, որոնք կառուցվում են ձևական տրամաբանական կանոնների միջոցով [օրինակ, նախադրյալի կրճատման կանոնը, որի համաձայն կամայական (A→B) և A բանաձևերից թույլատրվում է արտածել B բանաձևը]՝ ելնելով տրամաբանական աքսիոմներից [օրինակ, (A&B)→A] և տվյալ տեսության կոնկրետ աքսիոմներից [օրինակ, $\forall_x\forall_y(x+1=y+1\to x==y)$]:

Ձևայնացված տեսության արտածումների միջոցով ստացված բանաձևերը կոչվում են այդ տեսության ձևային թեորեմներ: Այս եղանակով հաջողվում է ձևայնացնել թվաբանությունը, երկրաչափությունը, մաթ. անալիզը, բազմությունների տեսությունը: Մ. տ-յան եղանակներով նշված տեսությունների հետազոտությունները կարևոր են այդ գիտությունների ընդհանուր կոնցեպցիաների և նրանց մեջ որոշ կոնկրետ հարցերի պարզաբանման համար:

Մ. տ-յան ստեղծման հետ կապված հիմնական սկզբունքները տվել է Գ. Վ. Լայբնիցը, մաթեմատիկական ապարատի հիմքերը մշակել է Ջ. Բուլը, պրեդիկատների տրամաբանության ապարատը՝ Գ. Ֆրեգեն: Մաթեմատիկայի հիմունքներում Մ. տ-յան կիրառման եղանակները տվել են Բ. Ռասելը և Դ. Հիլբերտը: Մ. տ-յան զարգացմանը նպաստել են ձևայնացված տեսությունների հնարավորությունների սահմանափակության մասին Կ. *Գյոդելի* և Ա. *Տարսկու*, ասույթների հաշվի լրիվության մասին՝ Է. Պոստի (1921), պրեդիկատների հաշվի լրիվության մասին՝ Կ. Գյոդելի (1930), ձևայնացած թվաբանության անհակասականության մասին՝ Գ. Գենցենի (1936), *կոնտինուումի*, վարկածի անկախության մասին՝ Կ. Կոհենի (1963) թեորեմները:

ՀՍՍՀ-ում Մ. տ-յան բնագավառում հետազոտություններ կատարվում են ԳԱ Հաշվողական կենտրոնում և Երևանի համալսարանում:

Գրկ. Բրուտյան Գ. Ա., Մաթեմատիկական տրամաբանության փիլիսոփայական ներածություն, Ե., 1968: Նույնի, Տրամաբանության դասընթաց, Ե., 1976: Ավետիսյան Ս. Հ., Մաթեմատիկական տրամաբանության հիմնական տարրերը, Ե., 1969: Мендельсон Э., Введение в математическую логику, пер. с англ., М., 1971; Шенфилд Дж., Математическая логика, М., 1975. *Ի. Զասլավսկի*

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՖԻԶԻԿԱ**, ֆիզիկական երևույթների մաթեմատիկական մոդելների տեսություն. հատուկ տեղ է գրավում *մաթեմատիկայում* և *ֆիզիկայում*: Մ. ֆ. ֆիզիկայի հետ սերտ կապի մեջ է այն մասով, որ վերաբերում է ֆիզիկական երևույթների մաթ. մոդելների կառուցմանը. մյուս կողմից՝ Մ. ֆ. մաթեմատիկայի բաժին է, որովհետև կառուցված մո-

դելները ուսումնասիրում են մաթ. մեթոդներով: Ֆիզիկայի շատ բաժինների, օրինակ, էլեկտրադինամիկայի, ձայնագիտության, հիդրոդինամիկայի, առաձգականության տեսության երևույթներին համապատասխանող մաթեմատիկական մոդելները նկարագրվում են *մասնական ածանցյալներով հավասարումներով*. ճառագայթման տեղափոխման, թերմոդինամիկայի ու մի քանի այլ բաժինների խնդիրները նկարագրվում են ինչպես գծային, այնպես էլ ոչ գծային ինտեգրալ, ինտեգրալ-դիֆերենցիալ, ֆունկցիոնալ հավասարումներով, որոնք և կազմում են *մաթեմատիկական ֆիզիկայի հավասարումները*:

Ֆիզիկական երևույթների մաթ. մոդելների ուսումնասիրությունը ոչ միայն հնարավորություն է տալիս ստանալ այդ երևույթները նկարագրող մեծությունների քանակական բնութագրեր, այլև խորանալ այդ երևույթների ֆիզիկական էության մեջ և, երբեմն էլ, կանխատեսել նոր օրինաչափություններ: Վերը ասվածի դասական օրինակ է Նյուտոնի տիեզերական ձգողության տեսությունը, որը ոչ միայն հնարավորություն տվեց բացատրել հայտնի մոլորակների շարժումը, այլև կանխատեսել նոր մոլորակների գոյությունը:

Ֆիզիկական երևույթների խորը և ավելի մանրամասն ուսումնասիրությունը բերում է Մ. ֆ-ի ավելի բարդ հավասարումների (օրինակ, ոչ գծային հավասարումներ), իսկ քվանտային էլեկտրադինամիկայի, դաշտի աքսիոմատիկ տեսության և ժամանակակից ֆիզիկայի այլ ուղղությունների զարգացումը բերեց Մ. ֆ-ի ինչպես նոր մեթոդների, այնպես էլ մաթեմատիկական նոր մոդելների ստեղծմանը (օրինակ, ընդհանրացված ֆունկցիաների տեսությունը, անընդհատ սպեկտրով օպերատորների տեսությունը են): Մյուս կողմից, հաշվողական մաթեմատիկայի բուռն զարգացումը հնարավորություն տվեց ստեղծելու Մ. ֆ-ի հավասարումների լուծման ուղղակի թվային մեթոդներ՝ ԷՀՄ-ների օգտագործմամբ. դրանցից առաջին հերթին պետք է նշել *եզրային խնդիրների* լուծման վերջավոր-տարբերակային մեթոդները:

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՖԻԶԻԿԱՅԻ ՀԱՎԱՍԱՐՈՒՄՆԵՐ**, *մասնական ածանցյալներով հավասարումներ*, ինչպես նաև ինտեգրալ, ինտեգրադիֆերենցիալ և ֆունկցիոնալ հավասարումներ, որոնց է հանգում բնության ֆիզիկական երևույթների մաթեմատիկական վերլուծությունը: Մաթեմատիկական ֆիզիկայի դասական դարձած հավասարումներից են *Լապլասի հավասարումը*, *ալիքային հավասարումը* և ջերմահաղորդականության հավասարումը՝

$$\frac{\partial u}{\partial t}=a^2\left[\frac{\partial^2 u}{\partial x^2}+\frac{\partial^2 u}{\partial y^2}+\frac{\partial^2 u}{\partial z^2}\right],$$

որոնք համապատասխանաբար էլիպսական, հիպերբոլական և պարաբոլական տիպի մասնական ածանցյալներով հավասարումներ են: Էլեկտրական դաշտի պոտենցիալը (երբ տիրույթում բացակայում են լիցքերը) բավարարում է Լապլասի հավասարմանը: Համասեռ մարմնի ջերմաստիճանը բավարարում է ջերմահաղորդականության հավասարմանը: Ալիքային հավասարումով են նկարագրվում էլեկտրամագնիսական և ձայնային ալիքների հետ կապված շատ պրոցեսներ: Մ. ֆ. հ-ի տեսության զարգացման սկզբնական շրջանում հիմնական ուշադրություն էր դարձվում այդ հավասարումների ընդհանուր լուծումը գտնելուն: Բայց, պարզվեց, որ ի տարբերություն *դիֆերենցիալ հավասարումների*, մաթ. ֆիզիկայի շատ քիչ հավասարումների համար կարելի է անջատել բավականաչափ պարզ բանաձևերով տրվող լուծումների մի ընդհանուր դաս: Մյուս կողմից, Մ. ֆ. հ-ով նկարագրվող ֆիզիկական երևույթների վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ հավասարումների հետ մեկտեղ առաջանում են լրացուցիչ պայմաններ, որոնց բնույթն էապես ազդում է դրանց լուծումների ուսումնասիրության վրա (տես *Կոշիի խնդիր*): Մ. ֆ. հ. այդ լրացուցիչ պայմանների հետ միասին կոչվում են մաթ. ֆիզիկայի խնդիրներ: Մաթ. ֆիզիկայի շատ խնդիրներ բերվում են ինտեգրալ և ինտեգրադիֆերենցիալ հավասարումների:

*Գրկ.* Тихонов А. Н., Самарский А. А., Уравнение математической физики, 4 изд., М., 1972.
*Ն. Թովմասյան*

**ՄԱԹԵՄԱՏԻԿԱՅԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ ՀՍՍՀ ԳԱ**, գիտահետազոտական հիմնարկություն Երևանում. կազմակերպվել է 1971-ին, ՀՍՍՀ ԳԱ մաթեմատիկայի և մեխանիկայի ինստիտուտի (1944—1955-ին՝ ՀՍՍՀ ԳԱ մաթեմատիկայի և մեխանիկայի սեկտոր) հիման վրա: Ունի կոմպլեքս փոփոխականի ֆունկցիաների տեսության, իրական փոփոխականի ֆունկցիաների տեսության, դիֆերենցիալ հավասարումների և ֆունկցիոնալ անալիզի, մոտավորությունների տեսության, հավանականությունների տեսության մեթոդների, կոմպլեքս անալիզի բաժիններ: Ինստ-ում հիմնաբար հետազոտություններ են կատարվում ամբողջ և մերոմորֆ ֆունկցիաների ընդհանուր տեսության, անալիտիկ ֆունկցիաների ներկայացման, մոտավորությունների տեսության, հարմոնիկ անալիզի, օրթոգոնալ շարքերի, բազիսների և ֆունկցիաների համակարգերի ներկայացման, օպերատորների սպեկտրալ տեսության, մասնական ածանցյալներով հավասարումների եզրային խնդիրների տեսության, ինտեգրալ և ստոխաստիկ երկրաչափության տարբեր հարցերի շուրջը:

1978-ից գործում է գիտությունների թեկնածուի աստիճան շնորհող մասնագիտացված գիտական խորհուրդ:

**ՄԱԹԵՎՈՍՅԱՆ** Արտաշես Ալեքսանդրի [ծն. 9.3.1904, գ. Կարճևան (այժմ՝ ՀՍՍՀ Մեղրու շրջանում)], հայ սովետական բուսաբույծ: Գյուղատնտ. գիտ. դ-ր (1948), պրոֆեսոր (1949): ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1961), ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ (1971): ՍՄԿԿ անդամ 1938-ից: 1931-ին ավարտել է Երևանի գյուղատնտ. ինստ-ը: 1933-ից աշխատում է նույն ինստ-ի բուսաբուծության ամբիոնում. 1956-ից՝ ամբիոնի վարիչ, 1950—56-ին՝ ուսումնա-գիտական աշխատանքների գծով դիրեկտորի տեղակալ: 1941—43-ին մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին, Մալայա զեմլյայի մարտերին:


Ա. Ա. Մաթևոսյան


Հ. Ի. Մաթևոսյան

Մ-ի գիտ. աշխատանքները վերաբերում են դաշտային կուլտուրաների մշակության և ՀՍՍՀ-ում կերի կայուն բազայի ամրապնդման հարցերին: Վ. Ի. Լենինի անվ. ՀամԳԳԱ Անդրկովկասի բաժանմունքի բուսաբուծության մասնաճյուղի և այլ գիտ. խորհուրդների անդամ է: Պարգևատրվել է Լենինի, «Պատվո նշան» շքանշաններով:

*Երկ.* Դաշտային կերահայթայթում, Ե., 1950: Հայաստանի կերային կուլտուրաները, Ե., 1959: Բուսաբուծություն, 2 հրտ., Ե., 1977: Эспарцеты Армении, Е., 1950.

**ՄԱԹԵՎՈՍՅԱՆ** Հրանտ Իգնատիոսի [ծն. 3.3.1935, գ. Անինձոր (այժմ՝ ՀՍՍՀ Թումանյանի շրջանում)], հայ սովետական գրող: 1962-ին ավարտել է Երևանի Խ. Աբովյանի անվ. մանկավարժական ինստ-ի պատմա-լեզվագրական ֆակուլտետը, 1967-ին՝ Մոսկվայի բարձրագույն սցենարական երկամյա դասընթացը: Գրական ասպարեզ է իջել 1961-ին լայն արձագանք գտած «Անինձոր» ակնարկով («ՍԳ», № 4): Մ-ի ստեղծագործության առանցքը հայրենի գյուղն է իր լուսավոր ու ստվերոտ կողմերով, մեծ ու փոքր հերոսներով, տնտեսական ու բարոյական հարաբերություններով: «Օգոստոս» (1967), «Ծառերը» (1978), «Մեր վազքը» (1978) վիպակների ու պատմվածքների ժողովածուներում ամփոփված «Մենք ենք, մեր սարերը», «Աշնան արև», «Կայարան» և այլ գործերում Մ. հայրենի հողը ներկայացնում է իբրև ոչ միայն կեցության, այլև բարոյական մնայուն արժեքների, սերնդակցական հաստատուն կապերի, հայրենիքի ըմբռնման հիմք ու հենարան: Մ-ի կենդանագրությունները («Ալխո», «Կանաչ դաշտը», «Գոմեշը») մարմնավորում են բնության և անհատի կապի գաղափարը: Նրա պատումները, որ իրենց շոշափած խնդիրներով, համարձակ ընդհանրացումներով, հոգեբանական խորունկ քննումներով բարձրացված են մեծ արվեստի աստիճանի, հրապարակվել են ՍՍՀՄ ժողովուրդների և արտասահմանյան բազմաթիվ լեզուներով: Մ-ի երկերի հիման վրա «Հայֆիլմը» նկարահանել է «Մենք ենք, մեր սարերը» (1969), «Աշնան արև», «Օգոստոս» (1977) գեղարվեստական ֆիլմերը:
*Լ. Հախվերդյան*

**ՄԱԹԵՎՈՍՅԱՆ** Շավարշ Մաթևոսի (7.3.1895, Երևան —16.4.1969, Երևան), հայ սովետական կենսաբան, պարազիտոլոգ: Բժշկ. գիտ. դ-ր (1940), պրոֆեսոր (1947), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1954):

ՍՄԿԿ անդամ 1945-ից: 1919-ին ավարտել է Մոսկվայի համալսարանի բժշկ. ֆակուլտետը: Մասնակցել է քաղաքացիական կռիվներին և Հայրենական պատերազմին: 1921-ից աշխատել է Երևանի սանիտարա-բակտերիալոգիական ինստ-ում: 1925—41-ին եղել է Տրոպիկական ինստ-ի մանրէաբանության, ապա պարազիտաբանության բաժնի վարիչ: 1948-ից ղեկավարել է Երևանի բժշկ. ինստ-ի ընդհանուր կենսաբանության և պարազիտաբանության ամբիոնը: 1958—63-ին՝ բժշկ. ինստ-ի գիտական գծով պրոռեկտորի տեղակալ: Գիտական աշխատանքները վերաբերում են ամեոբիազի պարազիտաբանության և համաճարակագիտության, մակաբույծ նախակենդանիների, ընդհանուր կենսաբանության հարցերի ուսումնասիրություններին: Մ. եղել է ՀՍՍՀ առողջապահության մինիստրության բժշկ. գիտական խորհրդի նախագահության անդամ, Հայաստանի համաճարակագետների, մանրէաբանների, ինֆեկցիոնիստների և հիգիենիստների ընկերության անդամ: Պարգևատրվել է Լենինի, Կարմիր աստղի շքանշաններով ու մեդալներով:

*Երկ.* Պարազիտ նախակենդանիներ և որդեր, Ե., 1959 (հեղինակակից՝ Տ. Ս. Գասպարյան): Ընդհանուր կենսաբանության դասընթաց, Ե., 1967:

**ՄԱԹԵՎՈՍՅԱՆ** Ռաֆայել Ռուբենի (ծն. 8.8.1924, Բաքու), շինարարական մեխանիկայի և կիրառական մաթեմատիկայի բնագավառի հայ սովետական գիտնական: Տեխ. գիտ. դ-ր (1963), պրոֆեսոր (1978): Ավարտել է Բաքվի Մ. Ազիզբեկովի անվ. ինդուստրիալ ինստ-ը (1948): 1951-ից բնակվում է Մոսկվայում: 1957-ից աշխատում է Վ. Ա. Կուչերենկոյի անվ. շինարարական կոնստրուկցիաների կենտրոնական ԳՀԻ-ում (Մոսկվա), 1974-ից՝ նույն ինստ-ի կայունության լաբորատորիայի վարիչ: Հիմնական աշխատությունները վերաբերում են կայունության որակական տեսության, ձողերի համակարգերի տատանումների մշակման, տեխ. գիտություններում մաթեմատիկայի կիրառման հարցերին:

*Երկ.* Устойчивость сложных стержневых систем (качественная теория), М., 1961.

**ՄԱԹԻԵԶ** (Mathiez) Ալբեր (1874—1932), ֆրանսիացի պատմաբան: Հումանիտար գիտ. դ-ր (1904): Ուսումնասիրել է Ֆրանսիական մեծ հեղափոխության պատմությունը: Հանդես է եկել *Ժ. Դանտոնի* իդեալականացման դեմ, ձգտել է վերականգնել Մ. *Ռոբեսպիերի* իսկական պատմական կերպարը: 1920-ական թթ. ազդվել է մարքսիզմից և այդ ժամանակաշրջանում գրել իր լավագույն երկերը, որոնցում մեծ տեղ է հատկացրել յակոբինյանների սոցիալ-տնտեսական քաղաքականությանը, Ֆրանս. մեծ հեղափոխության պատմության մեջ յակոբինյան դիկտատուրայի դերին: Պաշտպանել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը:

*Երկ.* Французская революция, т. 1—3, М.—Л., 1925—30.

*Գրկ.* Лукин Н., Альбер Матьез (1874—1932), «Историк-марксист», 1932, № 3 (25).

**ՄԱԹԻՆԳԼԻ** (Mattingly) Թոմաս (ծն. 1936), ԱՄՆ-ի տիեզերագնաց-օդաչու, ռազմածովային նավատորմի 3-րդ կարգի կապիտան: Ավարտել է Օբեռնի (Ալաբամայի նահանգ) համալսարանը (1958): Մինչև ԱՄՆ-ի տիեզերագնացների խմբում ընդգրկվելը (1966) ավարտել է աերոտիեզերական հետազոտությունների օդաչուների պատրաստման դպրոցը: 1972-ի ապրիլի 16—27-ը, որպես «Ապոլլոն-16» տիեզերանավի հիմնական բլոկի օդաչու, Ջ. *Յանգի* և Չ. *Դյուկի* հետ թռիչք է կատարել դեպի Լուսին: Լուսնամերձ ուղեծրում մնացել է ավելի քան 5 օր: Երկրից 300 հզ. *կմ* հեռավորության վրա գտնվելիս դուրս է եկել բաց տիեզերք (62 *ր*):

**ՄԱԹՀՈՒՐԱ** (Mathura), Մ ա թ ր ա, քաղաք Հյուսիսային Հնդկաստանում, Ուտտար Պրադեշ նահանգում, Ջամնա գետի ափին: 140,5 հզ. բն. (1971): Տրանսպորտային հանգույց է: Կա բուսական յուղի արտադրություն, քիմ., տեքստիլ արդյունաբերություն, մետաղամշակություն: Մ. հայտնի է բուդդայական հին հուշարձաններով (մ. թ. ա. IV—III դդ.) և հինդուական տաճարներով:

**ՄԱԹՅՈՒ** (Matthew) Առնոլդ (1822—1888), անգլիացի բանաստեղծ, քննադատ: Վիկտորիական շրջանի առաջատար բանաստեղծներից և քննադատներից: Իր ստեղծագործություններում խստորեն քննադատել է «Վիկտորիական հասարակության ծաղկման» առասպելը: 1849-ին հրատարակել է «Մոլորված խրախճանասերը» բանաստեղծությունների առաջին գիրքը, 1852-ին՝ «Էմպեդոկլեսը Էտնայի վրա», 1867-ին՝ «Նոր պոեմներ» ժողովածուները: Որպես քննադատ հանդես է եկել «Մշակույթ և անարխիա» (1869), «Գրականություն և դոգմա» (1873) էսսեներով, որոնցում բուրժ. քաղքենիական մտածողության պրոզաիզմին հակադրել է գեղեցկության, ճշմարտության, բարության գաղափարներով ներթափանցված գրականության դաստիարակչական բարձր նպատակը: Մ-ի առավել աչքի ընկնող հոդվածներն ամփոփվել են «Քննադատության փորձեր»-ում (1—2 գիրք, 1865, 1888):

*Ա. Գասպարյան*

**ՄԱԹՈՒՋԵՆԻ** (Arbutus), մ ո ր ո ւ ծ ա ռ, հավամրգազգիների ընտանիքի փոքր ծառերի կամ թփերի ցեղ: Տերևները հերթադիր են, կոշտ, պարզ, ամբողջական: Ծաղիկները երկսեռ են, վարդագույն կամ սպիտակ՝ զագաթային հուրաններում: Պտուղը հատապտղանման է, գնդաձև, բազմասերմ: Հայտնի է Մ-ու ավելի քան 20 տեսակ՝ տարածված միջերկրածովյան երկրներում և Հյուսիսային Ամերիկայում: Կ ա ր մ ի ր Մ. (A. andrachne) դեկորատիվ և մեղրատու բույս է, բնական-րեն աճում և մշակվում է Սև ծովի ափերին, Թբիլիսիում, Լենքորանում, Միջին Ասիայում: Բնի կեղևը վառ կարմիր է, աշնանը կարմրում է նաև ընձյուղների կեղևը: Խ ո շ ո ր ա պ տ ու ղ Մ-ու (A. unedа) պտուղները ուտելի են, օգտագործվում են թարմ և վերամշակված (մուրաբա, լիկյոր ևն) վիճակում: Կեղևը և ծաղիկները կիրառվում են բժշկության մեջ: Մշակվում է Ղրիմում և Անդրկովկասում:

**ՄԱԹՈՒՍԱՂԱ** (ծն. թ. անհտ.—մոտ 652), հայ փիլիսոփա գիտնական, հռգևոր գործիչ: Կենսագրական ստույգ տվյալներ մեզ չեն հասել: Մ. կազմակերպել է Սահակ Պարթևի և Մեսրոպ Մաշտոցի գործերի մեկնությունները: 633-ի Կարինի ժողովում դավանաբանական վեճի ժամանակ կարդացվել է Մ-ի թուղթը, որտեղ հեղինակը հիմնավորապես մերժել է *քաղկեդոնականությունը*: 634-ից եղել է Սյունիքի եպիսկոպոսը: Ստեփանոս Օրբելյանը իր «Պատմութիւն նահանգին Սիսական» գրքում նրան անվանում է ժամանակի մեծ քերթող, փիլիսոփա, ճարտասան և հմուտ հոգևոր գործիչ՝ «...յի ամենայն իմաստութեամբ և կատարեալ գիտութեամբ» (էջ 112):

*Մ. Մկրտչյան*

**ՄԱԺԱՆԴԻ** (Magéndie) Ֆրանսուա (1783—1855), ֆրանսիացի ֆիզիոլոգ: Փարիզի ԳԱ անդամ (1821), փոխպրեզիդենտ (1836), բժշկական ակադեմիայի անդամ (1819): Առաջիններից մեկն է կիրառել փորձառական մեթոդը կենդանիների ֆիզիոլոգիայում: 1822-ին փորձով հաստատել է Չ. Բելի սահմանած դրույթը, ըստ որի ողնուղեղի ետին նյարդարմատները զգացող են, իսկ առջևինը՝ շարժիչ: Մ. փորձով հիմնավորել է նյարդային համակարգի սնուցող ազդեցությունը, ուսումնասիրել մարսողությունը, մշակել կենդանահատման տեխնիկան: Զբաղվել է նաև նյարդային համակարգի ֆիզիոլոգիայի, ընդհանուր ախտաբանության, թունագիտության և ֆարմակոդինամիկայի որոշ հարցերով:

**ՄԱԺԱՔ**, տես *Կեսարիա*:

**«ՄԱԺԻՆՈՅԻ ԳԻԾ»**, ֆրանսիական ամրությունների համակարգ Գերմանիայի հետ սահմանի վրա՝ Բելֆորից մինչև Լոնգյուոն՝ 380 *կմ* երկարությամբ: Կառուցվել է ռազմ. մինիստր Մաժինոյի առաջարկով, 1929—34-ին, կատարելագործվել է մինչև 1940-ը: Նախատեսված էր Հս-Արլ. Ֆրանսիան գերմ. հարձակումից պաշտպանելու համար: 1936—40-ին «Մ. գ.» մինչև Հյուսիսային ծով հասցնելու նպատակով սկսել է կառուցվել «Դալադյեի գիծը» (620 *կմ* երկարությամբ), որը չի ավարտվել: 1939—45-ի երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ գերմանաֆաշիստական զորքերը դուրս եկան (1940) «Մ. գ.»-ի թիկունքը և Ֆրանսիայի կապիտուլյացիայից հետո հարկադրեցին «Մ. գ.»-ի կայազորին հանձնվել: Պատերազմից հետո կանգուն մնացած ամրությունները, ինչպես նաև վերականգնվածները, օգտագործվում են որպես ռազմ. պահեստներ:

**ՄԱԺՈՐ** (< լատ. major — մեծ), *լադ*, որի հիմքում ընկած է մեծ (մաժոր) եռահնչյուն: Ունի լուսավոր լադային երանգ, հակադիր է *մինորին*, և այդ հակադրությունը երաժշտության մեջ գեղագիտական




կոնտրաստ ստեղծող կարևոր միջոցներից է: Մ. դասական տեսք է ստացել XVIII դ. (ֆունկցիոնալ հարմոնիայի դարաշրջանում): XIX դ. կեսերից Մ. և մինոր լադերի փոխներթափանցման հետևանքով

գոյացել է մաժորա-մինոր միավորված համակարգը:

**ՄԱԺՈՐԻՏԱՐ ՀԱՄԱԿԱՐԳ** (< ֆրանս. majorite — մեծամասնություն), բուրժուական երկրներում ընտրությունների արդյունքը որոշելու կարգ: Ըստ Մ. հ-ի ընտրական օկրուգում դեպուտատական տեղեր ձեռք է բերում այն թեկնածուն կամ կուսակցության թեկնածուների խումբը, որը հավաքել է օրենքով նախատեսված ձայների մեծամասնությունը: Ներկայումս տարածված են բացարձակ կամ հարաբերական (ԱՄՆ, Մեծ Բրիտանիա, Հնդկաստան, Մեքսիկա ևն) մեծամասնության համակարգերը: Բացարձակ մեծամասնության դեպքում ընտրվում է ձայների բացարձակ (կամ պարզ) մեծամասնություն (50% +1) հավաքած թեկնածուն: Հարաբերական մեծամասնության դեպքում անհրաժեշտ է հավաքել ձայների ավելի մեծ քանակ, քան հակառակորդներից յուրաքանչյուրը: Մ. հ. չի արտահայտում քաղ. ուժերի իրական հարաբերակցությունը, այս կամ այն կուսակցության դերը երկրի քաղ. կյանքում:

Բազմակուսակցական երկրներում այդ համակարգը ձեռնտու է բուրժ. խոշոր կուսակցություններին: Դեմոկրատական ուժերը պայքարում են *ներկայացուցչության համամասնական համակարգի* համար, որով կուսակցությունների ներկայացուցչությունը պառլամենտում որոշվում է ըստ հավաքած ձայների:

*Հ. Խաչատրյան*

**ՄԱԼ** (արաբ. «ունեցվածք», «եկամուտ»), հարկատեսակ, որով Զաքարյան Հայաստանում (XII դ. վերջ —XIII դ. 1-ին կես) հարկվել է հողը, իսկ մոնղ. (XIII—XIV դդ.) և իրան. (XVI—XVIII դդ.) տիրապետության շրջաններում՝ ամբողջ ունեցվածքը: Գրիգոր Ակներցի և Կիրակոս Գանձակեցի պատմիչները մոնղ. տիրապետության շրջանում գանձվող պետ. հարկերի մեջ առաջինը հիշատակել են Մ., ժամանակակից պատմագիր Ռաշիդադդին այն համարել է հողահարկին (խարաճին): Ուսումնասիրողների մի մասը Մ. համարում է դրամավճար, հողահարկ, մյուսը՝ ընդհանրապես հարկ (լայն առումով) և հողահարկ (նեղ առումով):

**ՄԱԼԱ**, գյուղ Տրապիզոնի վիլայեթի Պլատանա գավառում, գեղատեսիլ լեռնադաշտում: Գյուղը հիմնել են համշենահայերը XVII դ. վերջին: Մ. ուներ զույգ, միմյանցից ձորով բաժանվող թաղեր, որոնք ըստ տների քանակի, կոչվում էին Մեծ և Փոքր Մ.: 1914-ին Մ. ուներ շուրջ 100 տուն բնակիչ, որից 24 տունը՝ Փոքր Մ-ում, մնացածը՝ Մեծում: Կար եկեղեցի (Ս. Գևորգ) և դպրոց, որը կառուցվել էր 1865-ին, Փոքր Մ. թաղում: 1875-ին կառուցվել է նոր եկեղեցի (Ս. Լուսավորիչ): Բնակիչների հիմնական զբաղմունքը հողագործությունն էր, անասնապահությունը և կաթնատնտեսությունը, նաև մեղվաբուծությունը: Առողջարար կլիմայի, սառնորակ, վճիտ ջրերի շնորհիվ Մ. Տրապիզոնի բնակիչների սիրած ամառանոցն էր: Մ-ի բնակիչները տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Փրկվածները բնակություն են հաստատել Աբխազիայում:

*Բ. Թոռլաքյան*

**ՄԱԼԱԳԱ** (Málaga), քաղաք Իսպանիայում, Անդալուզիայում: Մալագա նահանգի վարչական կենտրոնն է: 374 հզ. բն. (1979): Նավահանգիստ և զետեղարանային բազա է Միջերկրական ծովի ափին, երկաթուղային և ավտոճանապարհների հանգույց: Զարգացած է գինեգործությունը (դեսերտային գինիների ավանդական արտադրություն), ձիթայուղի, ձկան և պտուղբանջարեղենի պահածոների, շաքարի արտադրությունը, նոր ճյուղերից՝ քիմիան և նավթաքիմիան: Կան նավաշինական, մետաղամշակման, օճառի և տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններ: Բեռնաշրջանառության մեջ գերազանցում է նավթի ներմուծումը: Մ. կլիմայական կուրորտ է: Հիմնադրել են փյունիկեցիները Մալակա անվամբ, ըստ երևույթին, մ. թ. ա. XI դ.: Պահպանվել են ճարտ. մի շարք հուշարձաններ:

**ՄԱԼԱԹԻԱ**, Մ ե լ ի տ ի ն ե, քաղաք Փոքր Հայքում, Խարբերդից հարավ-արևմուտք, Եփրատի աջ կողմում, գետափից մոտ 15 *կմ* հեռու, երեք կողմից լեռներով պատած հարթավայրում: Հիշատակված է խեթական (Մելիտա), ասորեստանյան (Մելիդ, Միլիդա, Մելիդի ևն), ուրարտ. (Մելիտեիա) արձանագրություններում, անտիկ հեղինակների՝ Ստրաբոնի, Տակիտոսի մոտ (Մելիտինե) ևն: Մ-ի տնտ. և քաղ. զարգացմանը նպաստել են աշխարհագրական հարմար դիրքն ու պատմ. տարբեր ժամանակներում գրեթե միշտ վարչական կենտրոն լինելը: Այն գտնվում էր պարսկ. հնագույն Արքայական ճանապարհի վրա (հետագա ժամանակներում ևս այնտեղով անցել են. կարավանային ուղիներ): Մ. Փոքր Հայքի երկրամասերից մեկի կենտրոնն էր, որպիսին մնաց մինչև Բյուզանդիայի Թեոդոսիոս կայսեր ժամանակները (IV դ. վերջ), երբ Փոքր Հայքը մասնատվեց երկու պրովինցիայի՝ Առաջին Հայքի՝Սեբաստիա կենտրոնով, և Երկրորդ Հայքի, որի կենտրոնը դարձավ Մ.: Հուստինիանոս կայսեր (527—565) վարչական բարեփոխումներից հետո Մ. դարձավ բյուզանդական Երրորդ Հայք պրովինցիայի կենտրոնը: 1071-ի Մանազկերտի ճակատամարտից հետո Մ. գրավել են սելջուկները: Թուրք. տիրապետության շրջանում Մ. իր շրջակայքով մտնում էր Սեբաստիայի վիլայեթի մեջ, իսկ երբ վերջինս մասնատվեց վարչական երկու միավորի, Մ. դարձավ համանուն վիլայեթի կենտրոնը: Մինչև XII—XIII դդ. Մ-ում գերակշիռ թիվ են կազմել հայերը, այնուհետև՝ հույները: Հետագայում քաղաքում աստիճանաբար բնակություն են հաստատել նաև թուրքերը: 1841-ին Մ-ի բնակիչները .չվերադարձան ամառանոցից, քանի որ նրանց տներում տեղավորվել էին կառավարական զորամասեր: Այդպես Հին Մ-ից 7—8 *կմ* հվ-արմ. հիմնվեց նոր Մ., որը XIX դ. սոսկ գավառի (սանջաքի) կենտրոն էր և մտնում էր նախ Մարաշի, իսկ նույն դարի 70-ական թթ.՝ Խարբերդի վիլայեթի մեջ: Հին Մ. այժմ շատ սակավ բնակիչներ ունի: Այն տեղացիներն անվանում են Էսկի Մալաթիա: Նրա շինություններից պահպանվել են պարսպի և նրա բուրգերի չնչին մնացորդները, հոգևոր ու աշխարհիկ շենքերի ու բնակելի տների ավերակներ: 1895-ի հայկ. կոտորածների ժամանակ Մ-ի հայ բնակիչները թուրք. զորքին ցույց են տվել համառ դիմադրություն, որի ժամանակ տվել են մոտ 7500 զոհ, մեծ մասամբ կանայք, երեխաներ ու ծերունիներ: 1915-ին Մ. ուներ 40 հզ. բնակիչ, որից 20 հզ.՝ հայ: Զբաղվում էին արհեստներով (առանձնապես լայն տարածում ունեին մանածագործությունն ու ջուլհակությունը), առևտրով (հատկապես՝ ափիոնի), շերամապահությամբ, երկրագործությամբ: Քաղաքում կային տաճարներ, վարչական խոշոր շենքեր, առևտրական մեծ հրապարակ: Եկեղեցիների թիվը հասնում էր 5-ի, որոնցից 3-ը՝ հայկ.: Քաղաքից դուրս, այգիների մեջ գտնվում էր Մ-ի եպիսկոպոսանիստ Ս. Լուսավորիչ վանքը: Մինչև 1915-ը քաղաքում գործում էին հայկ. երեք ուսումնարան: Մ-ի հայ բնակչությունը զանգվածաբար բնաջնջվեց 1915-ին, թուրք. կառավարության կազմակերպած ջարդերի հետևանքով: Կենդանի մնացածները տեղահանվեցին և քշվեցին սիրիական անապատներ, ապա ստիպված հեռացան զանազան երկրներ:

*Գրկ.* Ա լ պ ո յ ա ճ յ ա ն Ա., Պատմություն Մալաթիոյ հայոց, Բեյրութ, 1961:

*Թ. Հակոբյան*

**ՄԱԼԱԹԻԱՅԻ ԲԱՐԲԱՌ**, հայերենի բարբառ: Ըստ ձևաբանական դասակարգման պատկանում է «կը» ճյուղին, ըստ բազմահատկանիշ վիճակագրական դասակարգման՝ արմ. խմբակցության Փոքր Ասիայի կամ արմ. բարբառախմբին: Միջավայրը կորցրած բարբառ է: Խոսվել է Մալաթիա (Մելիտինե) քաղաքում և շրջակա գյուղերում: Ձայնավոր հնչյուններն են **ա**, **ա̈**, **է**, **ը**, **ի**, **օ**, **օ̈**, **ու**, **ու̈**: Երկբարբառներ չկան: Բաղաձայնական համակարգը երկանդամ խլազուրկ է. գրաբարի ձայնեղ պայթականներին ու կիսաշփականներին ընդհանրապես համապատասխանում են շնչեղ խուլեր (բուրդ>փուրթ, գող>քօղ), խուլերին՝ ձայնեղներ (պատ>բադ, տէր> >դէր): Պարզ խուլերն իբրև դիրքային տարբերակներ հանդիպում են **ս**, **շ**, **խ**, **ք**-ին հաջորդող կամ նախորդող դիրքերում: Ձայնավորները կրել են միայն մասնակի փոփոխություններ՝ **ա**>**ա̈** (արիւն>ա̈րին), **ե**>**ի**, **ա** (եմ>իմ, ձեռք> >ցառք), **ը(ր)**>**է** (խնձոր>խընձէր), **ու**> >**օ** (ուր>հօր, ջուր>չօր): Գործում է ձայնավորների լիահնչության օրենքը (դդում>թութում, ծնունդ>ձունունդ): Շեշտը վերջնահար է: Գրաբարի երկբարբառների դիմաց կան պարզ ձայնավորներ՝ **այ**>**ա**, **ա̈** (ձայն>ցան, հայր>հա̈ր), **եա**>**է** (լեարդ>լէրթ), **իւ**>**ի**, **օ**, **ու** (ալիւր> >ալիր, սիւն>սօն, բարութիւն>փարութուն), **ոյ**>**օ**, **ու** (բոյն>փօն, զրոյց> զուրուց): Գոյականի հոգնակին կազմվում է **էր**, **նէր**, նաև՝ **ստան**, **անք**, **դանք**, **դէք**, **ք**, **օնք**, **էնք** վերջավորություններով: Ունի 4 հոլովաձև՝ ուղղական-հայցական, սեռական-տրական, բացառական, գործիական: Չկա անձի-իրի ձևային տարբերակում: Սեռական-տրականը որոշյալության դեպքում ընդունում է հոդ, ունի **ի(ն)**, **ու(ն)**, **ան**, **վա(ն)**, **օչ**, **ա**, **ու/ա**, **ա/օ**, **ք/ց**, **էք/օց** (դըղէք-դըղօց) հոլովական թեքույթ-

ները: Գործիականի վերջավորությունն է **օք/մօք**: Բայը ունի 3 լծորդություն՝ **ա, է, ի**, 4 եղանակաձև՝ ըղձական, սահմանական, հարկադրական, հրամայական: Սահմանական ներկան ու անկատարը ունեն շարունակականի ձևեր, որոնք կազմվում են ըղձականին (յ)**ա** մասնիկի հավելմամբ. ձայնավորով սկսվող բառերը ստանում են նաև **գ** նախադաս մասնիկ (քըրիմ ա, քըրէյի յա, գավլիմ ա, գավլէյի յա): Սրանց ժխտականը կազմվում է դրական խոնարհման ձևերի և օժանդակ բայի ժխտական ձևերի հարադրությամբ (չիմ քըրիմ ա, չիս քըրիս ա): Սահմանական ապառնին կազմվում է ապառնի դերբայով (քըրէլույիմ): Պայմանական եղանակիմաստն արտահայտվում է ընդհանրական ներկայի ձևերով (գըքըրիմ), որի ժխտականը կազմվում է ժխտական դերբայով (չիմ քըրիր): Հարկադրական եղանականիշն է **բիդի** (բիդի քըրիմ), ժխտականը՝ **չիբի** (չիբի քըրիմ):

*Գրկ.* Աճառյան Հ., Հայոց լեզվի պատմություն, մաս 2, Ե., 1951: Դանիելյան Թ., Մալաթիայի բարբառը, Ե., 1967: Ջահուկյան Գ., Հայ բարբառագիտության ներածություն, Ե., 1972: *Ա. Հանեյան*

**ՄԱԼԱԹԻԱՅԻ ԴԱՇՏ**, միջլեռնային հարթավայր փոքրասիական բարձրավանդակի արևելյան մասում, Նուրիակ, Ենգիզեկ, Մալաթիա լեռների միջև, Եփրատ գետի աջ ափին: Երկարությունը մոտ 68 *կմ* է, լայնությունը՝ մոտ 34 *կմ*: Ձգվում է հս-արլ-ից հվ-արմ. ուղղությամբ: Ունի հվ-արլ. թույլ թեքություն, 600—1000 *մ* բարձրություն: Ծածկված է ջրաբերուկներով: Օգտակար հանածոներից կան երկաթ, պղինձ, քարածուխ, շինանյութեր, կերակրի աղ: Ունի բարեխառն կլիմա՝ տաք ամառ, ցուրտ ձմեռ: Հունվարի միջին ջերմաստիճանը մոտ —4°C է, հուլիսինը՝ 20—22°C, տարեկան տեղումները՝ 400—600 *մմ*: Գլխավոր գետը Թոխման (Մելաս) է: Տարածված են շագանակագույն և լեռնամարգագետնային հողերը՝ իրենց բնորոշ բուսածածկույթով: Լեռնաշղթաների ստորոտներում տեղ-տեղ կան անտառային պուրակներ: Ոռոգվող հողերում մշակում են հացահատիկ, բանջարեղեն, բամբակ, ծխախոտ, զբաղվում՝ խաղողագործությամբ և պտղաբուծությամբ:

**ՄԱԼԱԹԻԱՅԻ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆ**, հայրենակցական միություն: Հիմնադրվել է 1904-ի հունվ. 30-ին, Նյու Յորքում, մալաթիացիների նախաձեռնությամբ: Նպատակն էր օգնել ծննդավայրի հայկ. դպրոցներին, իսկ 1915-ից հետո՝ Մեծ եղեռնից փրկված հայրենակիցներին: Մ. կ. ը-յան նախաձեռնությամբ ու խնդրանքով, Սովետական Հայաստանի կառավարության որոշմամբ 1927-ին հիմնադրվեց Նոր Մալաթիա ավանը, որի առաջին բնակիչները դարձան ներգաղթած մալաթիացիները (Ֆրանսիայից, Հունաստանից, Թուրքիայից ևն): Ընկերության միջոցներով Նոր Մալաթիայում հիմնադրվեց տրիկոտաժի արհեստանոց (որի հիմքի վրա հետագայում կառուցվեց Շահումյանի շրջանի № 1 տրիկոտաժի ֆաբրիկան): Մ. կ. ը. միջոցներ հատկացրեց նաև Լենինականի երկրաշարժից տուժածների օգնության ֆոնդին, իսկ 1941—45-ի երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին և դրանից հետո՝ «Սասունցի Դավիթ» տանկային շարայանը և ներգաղթի հանգանակությանը: 1960-ական թթ. սերտացան Մ. կ. ը-յան կապերը Սովետական Հայաստանի, Նոր Մալաթիայի միջնակարգ դպրոցի, «Մալաթիա» հիվանդանոցի (որին ընկերությունը նվիրել է շուրջ 100 հզ. դոլլարի արժողության բժշկ. սարքավորումներ) հետ: Նոր Մալաթիայի հիմնադրման 40-ամյակի կապակցությամբ ընկերության նախաձեռնությամբ ու միջոցներով Նոր Մալաթիայում կառուցվել է հուշարձան:

Մ. կ. ը. մասնաճյուղեր ունի ԱՄՆ-ի, Հարավային Ամերիկայի, Ֆրանսիայի հայաշատ քաղաքներում, Կուբայում, Լիբանանում, Սիրիայում, Երուսաղեմում ևն: Ընկերությունն ամեն տարի հրավիրում է պատգամավորական ժողով: Կենտրոնական վարչությունը, որ երկար տարիներ գտնվում էր ԱՄՆ-ի Ֆիլադելֆիա քաղաքում, փոխադրվել է Ուստր: Նախագահն է Գ. Սուրադյանը, քարտուղարը՝ Ս. Պաղտասարյանը:

1935-ից Մ. կ. ը. հրատարակում է «Նոր Մալաթիա» պաշտոնաթերթը: 1961-ին հրատարակել է «Պատմություն Մալաթիո հայոց» (հեղ. Ա. Ալպոյաճյան) պատմաազգագրական գիրքը: *Պ. Մարտիրոսյան*

**ՄԱԼԱԹՅԱՆ** Նշան Ավետիսի (20.11.1896, ք. Մուշ—12.3.1977, Երևան), հայ սովետական անասնաբույժ: Գյուղատնտ. գիտ. դ-ր (1951), պրոֆեսոր (1952), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1965): Ավարտել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանը (1919) և Երևանի համալսարանի գյուղատնտ. ֆակուլտետը (1925): 1925—28-ին աշխատել է Երևանի համալսարանում, 1928—76-ին՝ Երևանի անասնաբուծական-անասնաբուժական ինստ-ում, 1944-ից գյուղատնտ. կենդանիների կերակրման ամբիոնի վարիչ, միաժամանակ՝ (1944—46) Հայկական անասնաբուծության և անասնաբուժության ԳՀԻ սեկտորի վարիչ:


Ն. Ա. Մալաթյան

Մ-ի աշխատանքները վերաբերում են գյուղատնտ. կենդանիների կերակրման, կերերի ընդհանուր հետազոտման, դրանց ու լեռնային արոտավայրերի արդյունավետ օգտագործման և այլ խնդիրներին:

*Երկ.* Գյուղատնտեսական կենդանիների կերակրումը, Ե., 1963: Տեղական կերերի քիմիական բաղադրությունը և սննդարարությունը (հեղինակակիցներ՝ Կոստիկյան Գ. Կ., Ղազարյան Վ. Ա.), Ե., 1974: Անասնաբուծական տերմինների ռուս-հայերեն բառարան, Ե., 1974: *Ա. Ռուխկյան*

**ՄԱԼԱԿԿԱ** (Malacca), թերակղզի Ասիայի հարավ-արևելքում, Հնդկաչին թերակղզու հարավային մասը, պատկանում է Թաիլանդին և Մալայզիային: Երկարությունը մոտ 1300 *կմ* է, տարածությունը՝ մոտ 190 հզ. *կմ*²: Մակերևույթը կազմված է ցածր և միջին բարձրության (մինչև 2190 *մ*) լեռներից, ափերը՝ ճահճապատ հարթավայրերից: Կան անագի, վոլֆրամի, ոսկու, պղնձի, երկաթի, մոլիբդենի, կապարի, ցինկի, բոքսիտի, քարածխի հանքավայրեր: Կլիման հվ-ում հասարակածային է, հս-ում՝ մերձհասարակածային, մուսսոնային: Տարեկան տեղումները 1000—4000 *մմ* են: Տարածքի մոտ 3/4-ը ծածկված է մերձարևադարձային խոնավ մշտականաչ անտառներով, ափամերձ վայրերը՝ մանգրովային անտառներով: Կենդանիներից կան գիբոն, լեմուր, մալայական գետակինճ, ռնգեղջյուր, փիղ:

**ՄԱԼԱԿԿԱ** (Malacca), քաղաք և նավահանգիստ Մալայզիայում, Մալակկա թերակղզում: Մալակկա նահանգի վարչական կենտրոնն է: 101 հզ. բն. (1981): Կան յուղի արտադրության, կաուչուկի նախնական մշակման ձեռնարկություններ: Արտահանում է կոպրա, կաուչուկ: Հիմնադրվել է 1402-ին:

**ՄԱԼԱԿԿԱՅԻ ՆԵՂՈՒՑ**, Մալակկա թերակղզու և Սումատրա կղզու միջև: Միացնում է Անդամանյան և Հարավ-Չինական ծովերը: Երկարությունը մոտ 1000 *կմ* է, նվազագույն լայնությունը՝ 40 *կմ*, խորությունը նավարկուղում՝ 25 *մ*: Հվ. մուտքի մոտ է Սինգապուր նավահանգիստը (Սինգապուր պետության մայրաքաղաքը):

**ՄԱԼԱԿՈԼՈԳԻԱ** (< հուն. μαλάκιον — փափկամորթ և ... *լոգիա*), կենդանաբանության բաժին. ուսումնասիրում է *փափկամորթներին*:

**ՄԱԼԱ-ՄՍՏԱՖԱ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Մանազկերտի գավառում: 1909-ին ուներ 30 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Գյուղի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է աքսորի ճանապարհին:

**ՄԱԼԱՅԱ ԶԵՄԼՅԱ**, տեղամաս *Նովոռոսիյսկ* քաղաքի հարավային ծայրամասում, Ցեմեսի ծովախորշի արևմտյան ափին, որտեղ 1943-ի փետրվարի 4-ից սեպտեմբերի 16-ը սովետական դեսանտային զորքերը ծանր մարտեր են մղել հենակետը գրավելու և այն ընդլայնելու համար: Օպերացիայի նպատակն էր օգնել Հյուսիս-Կովկասյան ռազմաճակատի 47-րդ բանակին, որն ազատագրում էր Նովոռոսիյսկն ու Թամանի թերակղզին: Դեսանտը (հիմնական ու ցուցադրական՝ օժանդակ) իջեցումը սկսվել է փետր. 4-ին նշված շրջանում, որտեղից և սկսվել է թշնամու դեմ մարտը: Հենակետը ձգվել է մինչև 4 *կմ* ճակատով և 2,5 *կմ* խորությամբ: Հետագայում այն կոչվել է Մալայա զեմլյա: Չնայած գերմանա-ֆաշիստական զորքերի բազմաթիվ գրոհներին, ավիացիայի հարվածներին, դեսանտայինները պահել են հենակետը: Գնահատելով ստեղծված իրադրությունը՝ սովետական հրամանատարությունը հիմնական դեսանտային ուժերն իջեցրել է ցուցադրականի՝ Ց. Կունիկովի ջոկատի իջած վայրում, Ցեմեսի ծովախորշի արմ. ափին: Մի

քանի գիշերվա ընթացքում Մ. զ. են ափ հանվել 2 ծովային ու հրաձգային բրիգադներ, հակատանկային կործանիչ գունդ և այլ զորամասեր, ռազմամթերք, պարեն: 5 օրում այստեղ կենտրոնացվել է դեսանտային 17 հզ. զինվոր ու սպա: Ձեռնարկված միջոցառումների շնորհիվ հնարավոր է դարձել հենակետը ընդլայնել մինչև 30 *կմ*²: Գերմանա-ֆաշիստական հրամանատարությունը դեսանտայինների դեմ դուրս է բերել մեծ քանակությամբ զորք, ավիացիան մշտապես ռմբակոծել է հենակետը (օրական 1000 և ավելի թռիչք): Մ. զ. մեծ դեր է խաղացել Նովոռոսիյսկ—Թամանի օպերացիայի հաջողության համար (տես *Նովոռոսիյսկ—Թամանի օպերացիա 1943*): Մ. զ-ի պաշտպանության հաջողությունը ապահովվեց ռազմ. գործողությունների հմուտ կազմակերպումով, որում մեծ դեր խաղաց կուսակցական-քաղաքական նպատակասլաց աշխատանքը, որն անց էր կացնում 18-րդ բանակի (հրամանատար՝ Կ. Ն. *Լեսելիձե*) քաղ. բաժինը՝ Լ. Ի. *Բրեժնևի* ղեկավարությամբ: Ցուցաբերած խիզախության համար 21 զինվորի շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում:

Դեսանտայինների առաջին ջոկատներում մարտնչել են ավելի քան 280 հայ ծովայիններ ու ծովային հետևազորայիններ: 225-օրյա հերոսամարտին մասնակցել են 3700-ից ավելի հայ ռազմիկներ, որոնցից քաջի մահով ընկել են 1186: Մ. զ. դեսանտի իջեցումը և ռազմ. գործողությունները իրենց վառ արտահայտությունն են գտել Լ. Ի. Բրեժնևի «Մալայա զեմլյա» (1978) գրքում:

*Գրկ.* Բ ր ե ժ ն և Լ. Ի., Մալայա զեմլյա, Ե., 1979: Ս ա ր գ ս յ ա ն Վ., Լեգենդար պլացդարմը, Ե. 1978: *Ա. Հովհաննիսյան*

**ՄԱԼԱՅԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, *մալայացիների* և նրանց ազգակից այն ժողովուրդների գրականությունը, որոնք ապրում են ժամանակակից Ինդոնեզիայի, Մալայզիայի և Հարավային Թաիլանդի տերիտորիայում: Հին մալայերենով ամենավաղ գրական հուշարձանները վերաբերում են VII դ.: Բացառված չէ, որ այդ լեզուն սանսկրիտի հետ եղել է Շրիվիջայա (VII—XII դդ.) հնդկացած ամբողջ կայսրության գրական լեզուն: XIII—XIV դդ. միջնադարյան Մ. գ-յան զարգացման կենտրոնը եղել է Պասեյ իշխանությունը (Սումատրայում), XV դ.՝ Մալակկա սուլթանությունը: XVI դ. սկզբներին այն տեղափոխվել է Ջոհոր և Աչե, իսկ XIX դ.՝ Պենյենգատ սուլթանությունները: Գրավոր գրականության արձակի հիմնական ժանրերը ներկայացված են տոհմաբանություն-ժամանակագրություններով և հիքայաթներով: XVI դ. վերջին—XVII դ. 1-ին կեսին են վերաբերում դասական Մ. գ-յան առավել նշանակալի ստեղծագործությունների՝ «Մալայական տոհմագրությունների» և միջնադարյան «Հանգա Թուահի պատմությունները» էպոսի վերջնական խմբագրությունները, ինչպես նաև ոչ ուղղափառ սուֆի բանաստեղծ Համզահ Ֆանսուրիի և նրա հետևորդ փիլիսոփաբնապաշտ Շամսուդդին Պասեյսկու (մահ. 1630) ստեղծագործությունը: Իրականության արտացոլման նկատմամբ բանական մոտեցումն է բնորոշ վաղ շրջանի լուսավորիչ Աբդուլլահ բին Աբդուլքադիր Մունշիի (1796—1854) և մալայացի վերջին պատմագիր Ռաջի Ալի Հաջիի (1909—1970) համար: Մ. գ-յան նոր և նորագույն շրջանի մասին տես *Մալայզիա* հոդվածի Գ ր ա կ ա ն ո ւ թ յ ո ւ ն բաժինը:

**ՄԱԼԱՅԱՆ ԱՐՇԻՊԵԼԱԳ**, Երկրագնդի ամենամեծ կղզիախումբը Ասիա և Ավստրալիա մայր ցամաքների միջև: Ընդգրկում է ավելի քան 10000 կղզի, մոտ 2 մլն *կմ*² ընդհանուր տարածությամբ: Կազմված է Մեծ և Փոքր Զոնդյան, Ֆիլիպինյան, Մոլուքյան և բազմաթիվ փոքր կղզիներից: Ռելիեֆում տիրապետում են միջին բարձրության և ցածր լեռները: Ամենաբարձր կետը Կինաբալու գագաթն է (4101 *մ*): Կան նաև բլրային հարթավայրեր ու դաշտավայրեր՝ կազմված ալյուվիալ և ծովային նստվածքներից: 330 հրաբուխներից 100-ը գործող է: Հարուստ է անագի, նավթի, երկաթի, նիկելի, վոլֆրամի, մանգանի, բոքսիտի հանքերով: Կլիման հասարակածային է, հս-ում և հվ-ում՝ մերձհասարակածային: Տարեկան տեղումները հարթավայրերում 1000—2000 *մմ* են, լեռներում տեղ-տեղ՝ ավելի քան 5000 *մմ*: Գետերը կարճ են, ջրառատ, հիդրոէներգիայի պաշարներով հարուստ: Տարածված են մերձարևադարձային, խոնավ, մշտադալար և մուսսոնային անտառներն ու սավաննաները, ծովափերի երկարությամբ՝ մանգրովային մացառուտները: Զարգացած է հողագործությունը:

**ՄԱԼԱՅԱ-ՊՈԼԻՆԵԶՅԱՆ ԼԵԶՈՒՆԵՐ**, ա վ ս տ ր ո ն ե զ ի ա կ ա ն լ ե զ ու ն ե ր, ցեղակից լեզուների ընտանիք: Ներկայանում է չորս խմբով՝ ինդոնեզյան, մելանեզյան, պոլինեզյան և միկրոնեզյան: Համեմատաբար քիչ ուսումնասիրված լեզվաընտանիքներից է, ընդ որում՝ որոշ լեզուների ցեղակցությունը դեռևս որոշակիորեն չի պարզված: Մ-պ. լ-ին բնորոշ են բազմավանկ (առավելապես՝ երկվանկ) արմատները, կցական կառուցատիպը, վերլուծական հարուստ ձևերը շարահյուսության մեջ: Առկա է ստացականության ուրույն կարգ, բայական համակարգում սուբյեկտը կամ օբյեկտը արտահայտվում է հատուկ մասնիկներով: Միկրոնեզյան լեզուներում թվականը սովորաբար ստանում է քերականական տարբեր ձևավորում՝ պայմանավորված տվյալ քանակով առնված առարկաների բնույթով: Մելանեզյան լեզուներում քերականորեն տարբերակված է ստացականությունը, ստացական առումը, և, ըստ ստացողի ու ստացյալի փոխհարաբերության, զանազանում են օտարված և չօտարված ստացականներ: Պոլինեզյան լեզուներին բնորոշ է հնչյունական կազմի սակավությունը (աղքատությունը)՝ 5 ձայնավոր և 9—10 բաղաձայն: Ինդոնեզյան և պոլինեզյան լեզուներում զերակշռում են բաց վանկերը: Ինդոնեզյան լեզուներից համեմատաբար խոշոր են մալայերենը, ինդոնեզերենը, տագալերենը, մալգաշերենը, ճավայերենը: Մալայերենը պետ. լեզու է Մալայզիայում (խոսողների թիվը՝ 12,5 մլն, 1970): Սրան շատ մոտ լեզու է ինդոնեզերենը, որի անունով էլ կոչվում է լեզուների այս խումբը (պետական լեզու է Ինդոնեզիայում): Ինդոնեզերենը սերում է մալայերենից: Ճավայերենը հայտնի է գրավոր հին աղբյուրներով: Նրա հին գրական տարբերակը հայտնի է «կավի» անունով: Տագալերենը պետական լեզու է Ֆիլիպիններում, մալգաշերենը՝ Մադագասկարի Դեմոկրատական Հանրապետությունում:

*Գրկ.* О языках, фольклоре и литературе Океании, [Сб. ст.], М., 1978. *Հ. Պետրոսյան*

**ՄԱԼԱՅԱՑԻՆԵՐ**, 1. Հարավ-Արևելյան Ասիայի մալայա-պոլինեզյան լեզվաընտանիքի ինդոնեզական խմբի լեզվով խոսող ժողովուրդների՝ նախկինում գրականության մեջ տարածված անվանումը, 2. ընդհանուր ծագմամբ, լեզվով, մշակութային ու կենցաղային շատ առանձնահատկություններով միմյանց մոտ ժողովուրդների խումբ Հարավ-Արևելյան Ասիայում: Տարբերակվում են բուն (Մալայզիայում և Սինգապուրում բնակվող) Մ. (ավելի քան 5 մլն, 1970) և մալայալեզու զանազան ժողովուրդները (7,5 մլն), որ առավելապես բնակվում են Ինդոնեզիայում: Լեզուն մալայերենն է, բաժանվում է մի շարք բարբառների: Մալայզիայի պաշտոնական լեզուն է Ռիաու և Լինգա արշիպելագներում ձևավորված լեզուն: Ընկալած XV դ. վերջից Մ-ի մեծամասնության պաշտոնական կրոնը մահմեդականությունն է, որը միահյուսված է հին ոգեպաշտական հավատալիքների, ինչպես և բուդդայականության ու հինդուիզմի տարրերի հետ: Մ-ի մեծ մասն զբաղվում է հողագործությամբ (բրինձ): Շատ Մ. աշխատում են օտարերկրյա (հիմնականում՝ անգլ.) և տեղական կապիտալիստների պլանտացիաներում (կաուչուկատու բույսեր, կոկոսյան արմավենի, շաքարեղեգ, սուրճ ևն), որոշ մասը՝ անագի հանքերում, տեքստիլ և սննդի արդյունաբերության մեջ: Մ-ի տնտ. կյանքում մեծ դեր ունեն գետային և ծովային ձկնորսությունն ու ծովագնացությունը:




**ՄԱԼԱՅԶԻԱ** (Malaysia), Մ ա լ ա յ զ ի ա յ ի Ֆ ե դ ե ր ա ց ի ա (Federation of Malaysia)

Բ ո վ ա ն դ ա կ ու թ յ ու ն






### I. Ընդհանուր տեղեկություններ

Մ. պետություն է Հարավ-Արևելյան Ասիայում, Մալակկա թերակղզու հվ. և Կալիմանտան կղզու հս. մասերում: Հարավ-Չինական ծովով բաժանված է Արևմտյան Մ-ի (Մալայա) և Արևելյան Մ-ի (Սարավակ և Սաբահ): Մտնում է Բրիտանական համագործակցության մեջ: Սահմանակից է Թաիլանդին, Ինդոնեզիային և Բրունեյին: Տարածությունը 332,8 հզ. *կմ*² է, բնակչությունը՝ 13,25 մլն (1979): Մայրաքաղաքը՝ Կուալա Լումպուր: Վարչականորեն բաժանված է 13 նահանգի՝ 9 սուլթանության և 4 նահանգապետության:

### II. Պետական կարգը

Մ. սահմանադրական միապետություն է, նահանգների ֆեդերացիա: Գործող սահմանադրությունն ընդունվել է 1957-ին (1963-ի փոփոխություններով): Պետության գլուխը գերագույն կառավարիչն է՝ ձևականորեն օժտված լայն լիազորություններով. նշանակում է ֆեդերացիայի բարձրագույն պաշտոնյաներին, իրավասու է հրավիրել ու արձակել պառլամենտը, հաստատել օրինագծեր ևն (իրականում լիազորություններն իրագործում է միայն կառավարության հանձնարարությամբ): Օրենսդրական իշխանության բարձրագույն մարմինը պառլամենտն է՝ կազմված երկու պալատից (սենատ, ներկայացուցիչների պալատ) և գերագույն կառավարչից: Ընտրական իրավունքից օգտվում են 21 տարին լրացրած բոլոր քաղաքացիները, սակայն կիրառվում է նստակեցության ցենզ: Գործադիր բարձրագույն մարմինը կառավարությունն է (մինիստրների կաբինետ)՝ պրեմիեր մինիստրի գլխավորությամբ, որին նշանակում է գլխավոր կառավարիչը: Դատական համակարգի մեջ մտնում են ֆեդերալ դատարանը, երկու բարձր դատարանները, օկրուգային դատարանները, մագիստրատների I և II կարգի դատարանները, տեղական առաջնորդների դատարանները ևն: Յուրաքանչյուր նահանգում գործում է մահմեդական իրավունքի դատարանների համակարգ:

### III. Բնությունը

Մ. գտնվում է հասարակածային գոտում: Մալակկա թերակղզու մակերևույթի մեծ մասը զբաղեցնում են բլուրները, ցածրադիր և միջին բարձրության (1000—2000 *մ*, առավելագույնը՝ 2190 *մ*, Տահան լեռ) լեռները, որոնց բաժանող երկայնաձիգ հովիտները լցված են փխրուն նստվածքներով: Թերակղզու ծովափնյա մասը զբաղեցնում են մինչև 90 *կմ* լայնության ալյուվիալ, հաճախ ճահճապատ, դաշտավայրերը: Դաշտավայրերը տարածված են նաև Կալիմանտան կղզու ափերի երկայնքով. կղզու կենտրոնական մասում դրանք փոխվում են բլուրների ու լեռնաշղթաների (2000—2400 *մ*): Մ-ի բարձրագույն կետը Կինաբալու մեկուսացած զանգվածն է (4101 *մ*, Կալիմանտան կղզի): Երկրաբանական կառուցվածքի և օգտակար հանածոների մասին տես *Կալիմանտան* և *Մալակկա* հոդվածներում:

**Կլիման** հասարակածային է, Մալակկա թերակղզու հս-ում՝ մերձհասարակածային, մուսսոնային: Օդի միջին ամսական ջերմաստիճանը 25—28°C է: Ծովափնյա շրջաններում տարեկան տեղումները 2000—2500 *մմ* են, լեռներում՝ 4000—5000 *մմ*:

**Ներքին ջրերը**: Գետային ցանցը խիտ է: Գետերը կարճ են, ջրառատ: Առավել խոշոր գետերն են Պահանգը, Ռաջանգը, Բարամը, Կինաբատանգան:

**Հողերը բուսական և կենդանական աշխարհը**: Տիրապետում են պոդզոլացած լատերիտները, դաշտավայրերում՝ ալյուվիալ հողերը: Տարածքի 3/4-ը ծածկված է մշտադալար խոնավ արևադարձային անտառներով, լեռների ներքին գոգավորությունները՝ չորասեր թփուտներով, բարձրադիր մասերը՝ մարգագետիններով: Կենդանական աշխարհը բազմատեսակ է, հարուստ: Հանդիպում են փիղ, երկեղջյուր ռնգեղջյուր, հիմալայան արջ, վագր, հովազ, գոմշացուլ, մարդանման կապիկներ, գետակինճ, կոկորդիլոսներ ևն:

### IV. Բնակչությունը

Մ-ի բնակչությունը բնութագրվում է էթնիկական բարդ կազմով: 47%-ը մալայացիներ են, մոտ 34%-ը՝ չինացիներ, 9%-ը՝ հնդիկներ: Պետ. լեզուն մալայերենն է, կրոնը՝ մահմեդականությունը: Կան նաև բուդդայականներ, կոնֆուցիականներ և քրիստոնյաներ: Պաշտոնական տոմարը գրիգորյանն է, օգտագործվում են նաև մահմեդական (լուսնային հիջրա) և լուսնային տոմարները: Խոշոր քաղաք-



Պինանգի համայնապատկերը

ներ են Կուալա Լումպուրը, Պինանգը, Իպոհը, Ջոհոր Բարուն, Կլանգը, Մալակկան:

## V. Պատմական ակնարկ

Մ-ի տարածքը բնակեցվել է վաղ քարի դարից: Մ. թ. I հազարամյակի սկզբին Կենտրոնական Սումատրայից Մ-ի տարածք են ներթափանցել այժմյան մալայացիների նախնիները: Մալակկա թերակղզում դասակարգերի առաջացման, պետականության կազմավորման գործում նշանակալի դեր են խաղացել առևտրական և մշակութային կապերը Հնդկաստանի հետ, հնդիկ գաղութարարների հայտնվելը, բուդդայականության և հինդուիզմի ներթափանցումը: Մ-ի տարածքում առաջին պետություններն առաջացել են Մալակկա թերակղզու հս-ում, որոնք III—VI դդ. կախման մեջ են եղել Հնդկաչինի Ֆունան պետությունից, VIII—XIII դդ.՝ Սումատրայի Շրիվիջայա կայսրությունից, XIV դ.՝ ինդոնեզական Մաջապահիտ կայսրությունից: XV—XVI դդ. սկզբին առաջացել են Մալակկայի (որի մեջ մտել են Մալակկա թերակղզին, Ռիաու արշիպելագը և Սումատրա կղզու արլ. մասը), Բրունեյի [(Կալիմանտան կղզու հս-ում), XV դ. այստեղ տարածվել է մահմեդականությունը] սուլթանությունները: 1511-ին Մալակկայի սուլթանությունը զավթել են պորտուգալացիները: XVI դ. Մալակկա թերակղզու հվ-ում կազմվել է Ջոհորի սուլթանությունը: 1641-ին Ջոհորի սուլթանությունը և հոլանդացիները զավթել են Մալակկան: XVIII դ. վերջից գաղութային էքսպանսիա է սկսել Մեծ Բրիտանիան, որը XIX—XX դդ. սկզբին իրեն է ենթարկել Մալայայի տարածքի սուլթանությունները և միավորելով ստեղծել Բրիտանական Մալայա գաղութը, XIX դ. վերջին իր պրոտեկտորատն է հաստատել Սարավակի և Սաբահի (Կալիմանտան կղզում) վրա:

Անգլ. գաղութարարները յուրացրին լավագույն հողերը, զբաղվեցին անագի հանույթով և կաուչուկի արտադրությամբ: Մ-ի ժողովրդի ազատագրական պայքարը գաղութային ճնշման դեմ ուժեղացավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ազդեցության տակ, երկիր թափանցեցին մարքսիզմ-լենինիզմի գաղափարները: 1920-ին ստեղծվեցին արհմիություններ, 1930-ին՝ Մալայայի կոմկուսը: 1941-ի դեկտեմբերին Մ. օկուպացրեց (մինչև 1945-ը) Ճապոնիան: 1945-ին անգլ. գաղութարարները վերադարձան Մ.: 1946-ի և 1948-ի սահմանադրական ռեֆորմներով Սինգապուրը անջատվեց Մալայայից, վերջինս ձևավորվեց որպես անգլ. գաղութ՝ 1946-ից՝ Մալայայի Միություն, 1948-ից՝ Մալայայի Ֆեդերացիա անվամբ: Սարավակը և Սաբահը 1946-ին անցան Մեծ Բրիտանիայի գաղութային մինիստրության իրավասության տակ: 1948-ին արգելվեցին կոմկուսը և դեմոկրատական այլ կազմակերպություններ: Անգլ. գաղութարարների դեմ պայքարելու նպատակով 1949-ին ստեղծվեց Մալայայի ժողովուրդների ազատագրական բանակը: Մ-ի հասարակական տարբեր խավերի ազգային-ազատագրական շարժման ճնշման տակ Մեծ Բրիտանիան 1957-ի օգոստ. 31-ին հարկադրված ընդունեց


Կուալա Լումպուր. «Ֆեդերալ» հյուրանոցը

Մալայայի Ֆեդերացիայի անկախությունը, պահպանելով սակայն իր տիրապետությունը տնտեսության մեջ: 1963-ին Մեծ Բրիտանիայի, Մալայայի Ֆեդերացիայի, Սինգապուրի, Սարավակի և Սաբահի միջև համաձայնագիր ստորագրվեց Բրիտանական համագործակցության շրջանակներում Մ-ի ֆեդերացիա ստեղծելու վերաբերյալ, որը հռչակվեց 1963-ի սեպտ. 16-ին: 1965-ին Մ-ի կառավարության և Սինգապուրի միջև հարաբերությունների սրման հետևանքով Սինգապուրը դուրս եկավ ֆեդերացիայից: 1960-ական թթ. 2-րդ կեսից Մ-ի կառավարությունը վարում է չմիանալու, խաղաղ գոյակցության քաղաքականություն: 1967-ին դիվանագիտական հարաբերություններ հաստատվեցին Մ-ի և ՍՍՀՄ-ի, այնուհետև նաև սոցիալիստական մյուս պետությունների միջև: 1972-ին ՍՍՀՄ-ի և Մ-ի միջև համաձայնագրեր ստորագրվեցին տնտ., տեխ., մշակութային և գիտական համագործակցության վերաբերյալ: Միաժամանակ Մ. սերտ հարաբերություններ է պահպանում ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի, Ճապոնիայի և այլ զարգացած կապիտալիստական երկրների հետ:

## VI. Քաղաքական կուսակցությունները և արհմիությունները

Ազգային ճակատ (ԱՃ), 10 կուսակցությունների կառավարող կոալիցիա է, որոնցից խոշորներն են. Մալայական միացյալ ազգային կազմակերպություն (ՄՄԱԿ), ստեղծվել է 1946-ին, արտահայտում է մալայական ֆեոդալա-բուրժ. վերնախավի շահերը: Մ-ի չինական ասոցիացիա (ՄՉԱ), հիմնվել է 1946-ին, տեղի չին. խոշոր բուրժուազիայի առաջատար կուսակցությունն է: Մ-ի հնդկական կոնգրես (ՄՀԿ), ստեղծվել է 1946-ին, արտահայտում է ունևոր հնդիկների շահերը: Ընդդիմադիր գլխավոր կուսակցություններն են՝ Դեմոկրատական գործողության կուսակցություն (ԴԳԿ), ստեղծվել է 1966-ին, արտահայտում է Մ-ում ապրող չինացիների շահերը: Պանմալայական իսլամական կուսակցություն (ՊԻԿ), ստեղծվել է 1951-ին, արտահայտում է մալայական միջին և մանր բուրժուազիայի, մահմեդական հոգևորականության շահերը:

Մալայայի կոմունիստական կուսակցություն (ՄԿԿ), հիմնվել է 1930-ին, 1948-ից գործում է անլեգալ, գտնվում է մաոյական ազդեցության տակ:

Մ-ի արհմիությունների կոնգրես (ՄԱԿ), հիմնվել է 1949-ին, գործում է իշխանությունների հսկողության ներքո, ունի մոտ 400 հզ. անդամ:


Ուղեկամուրջ Կուալա Լումպուրում

## VII. Տնտեսա-աշխարհագրական ակնարկ

Գաղութային երկարատև տիրապետության հետևանքով տնտեսությունը ստացել է ագրարային-հումքային բնույթ և կախված է օտարերկրյա (գլխավորապես՝ անգլ.) կապիտալից: Անկախությունից հետո տեղի են ունեցել կառուցվածքային տեղաշարժեր: Մշակվում են տնտեսության զարգացման երկարաժամկետ պլաններ, կարևոր տեղ է տրվում պետական սեկտորին:

**Գյուղատնտեսությունը** տնտեսության գլխավոր ճյուղն է: Գյուղատնտեսության և ամբողջ տնտեսության հիմնական ճյուղը կաուչուկի արտադրությունն է (1655 հզ. *տ*, 1979): Կարևոր նշանակություն ունի յուղատու (2088 հզ. *տ* արմավայուղ, 1979) և կոկոսյան արմավենու, անանասի, պղպեղի մշակությունը: Պարենային հիմնական կուլտուրան բրինձն է, որը երկրի պահանջները չի բավարարում: Մշակում են նաև բանջարեղեն, պտղատուներ, ծխախոտ, թեյ: Անասնաբուծությունը թույլ է զարգացած: Զբաղվում են ձկնորսու-

թյամբ: Զարգացած է փայտամթերումը (5,7 մլն $մ^3$ սղոցանյութ, 1979):

**Արդյունաբերության** առաջատար ճյուղը հանքարդյունահանող արդյունաբերությունն է: 1979-ին արտադրվել է 63 հզ. *տ* անագի կոնցենտրատ: Արդյունահանվում են նաև երկաթի ու պղնձի հանքաքար, բոքսիտներ, ոսկի, նավթ: 1977-ին արտադրվել է 7346 մլն *կվտ·ժ* էլեկտրաէներգիա: Վերամշակող արդյունաբերությունը ներկայանում է հիմնականում ավանդական ճյուղերով՝ անագի հալում, կաուչուկի, գյուղատնտեսության հումքի վերամշակում, անանասի պահածոների արտադրություն: 1970-ական թվականներին հիմնվել են ավտոմոբիլների, մոտոցիկլետների, գյուղատնտ. մեքենաների հավաքման, էլեկտրատեխնիկական սարքավորման, մետալուրգիական, ցեմենտի, տեքստիլ, քիմ. ձեռնարկություններ: Տարածված է արհեստա-տնայնագործական արտադրությունը (բրուտագործություն, ոսկերչություն, ժանյակագործություն):

**Տրանսպորտը**. Երկաթուղիների երկարությունը 1815 *կմ* է, ավտոճանապարհներինը՝ 27 հզ. *կմ* (1976): Կարևոր դեր ունի



Կուալա Լումպուրի երկաթուղային կայարանը

ծովային տրանսպորտը, բայց ազգային առևտրական նավատորմը հզոր չէ: Գլխավոր նավահանգիստներն են Պինանգը, Պորտ Սուետտենեմը, Սանդականը: Միջազգային օդանավակայաններ կան Կուալա Լումպուրում, Պինանգում և Կոտա Կինաբալուում:

**Արտաքին առևտուրը**: Արտահանում է կաուչուկ, անագ, փայտանյութ, նավթ և նավթամթերքներ, արմավի յուղ, ներմուծում՝ մեքենաներ և սարքավորում, վառելանյութ, քիմ. նյութեր ևն: Արտաքին առևտրական գործընկերներն են Ճապոնիան, ԱՄՆ, Սինգապուրը, Մեծ Բրիտանիան, ԳՖՀ, ԶԺՀ, Ավստրալիան: Զարգանում են առևտրական հարաբերությունները ՍՍՀՄ-ի հետ:

Դ ր ա մ ա կ ա ն   մ ի ա վ ո ր ը ռինգիտն է (մալայզիական դոլլար): 100 ռինգիտը= 31,71 ռուբլու (1981):

### VIII. Զինված ուժերը

Մ-ի զինված ուժերը (64 հզ. մարդ, 1977) կազմված են ցամաքային զորքերից (52,5 հզ. մարդ), ռազմաօդային (6 հզ. մարդ) և ռազմածովային (5,5 հզ. մարդ) ուժերից: Գերագույն գլխավոր հրամանատարը գերագույն կառավարիչն է: Անմիջական ղեկավարությունն իրականացնում է պաշտպանության մինիստրը: Բանակը համալրվում է վարձվող կամավորներով, թեև կա համընդհանուր զինապարտության օրենք: Ցամաքային զորքերը կազմված են հետևակային 9 բրիգադից, հատուկ զորամիավորումներից: Ռազմաօդային ուժերն ունեն մարտական 50 ինքնաթիռ, ուղղաթիռների 5 էսկադրիլիա, ռազմածովային ուժերը՝ տարբեր նշանակության մոտ 60 նավ: Կան նաև տերիտորիալ և ոստիկանական միավորումներ:

### IX. Բժշկա-աշխարհագրական բնութագիրը

1970—75-ին Մ-ում ծնունդը կազմել է 1000 բնակչին՝ 33,2, մահացությունը՝ 6,5, մանկական մահացությունը 1000 ողջ ծնվածին՝ 36,4: Գերակշռում են վարակիչ և մակաբուծական հիվանդությունները: Մահացության հիմնական պատճառներն են ուղեղի անոթների ախտահարումները, թոքաբորբերը, տուբերկուլոզը, չարորակ նորագոյացությունները, ստամոքսաաղիքային համակարգի հիվանդությունները, տարածված են մալարիան, բորը, պարբերաբար գրանցվում են ծաղիկի և խոլերայի դեպքեր:

1975-ին Մ-ում գործել է 310 հիվանդանոց՝ 40,2 մահճակալով (1000 բնակչին՝ 29,2 մահճակալ): Աշխատել են 1,6 հզ. բժիշկ (10 հզ. բնակչին՝ 1,3 բժիշկ), 1,6 հզ. բժշկի օգնական, ավելի քան 874 ատամնատոլոգ և ատամնաբույժ, 474 դեղագործ, 14 հզ. միջին բուժաշխատող: Բժշկ. կադրեր է պատրաստում Մալայայի և Ազգային համալսարաններին կից բժշկ. ֆակուլտետները: Գործում են նաև բուժքույրեր, մանկաբարձներ և այլ միջին բուժաշխատողներ պատրաստող դպրոցներ:

### X. Լուսավորությունը և գիտական հիմնարկները

Ժողկրթության համակարգի մեջ մտնում են 6-ամյա տարրական, 3-ամյա ցածր, 2-ամյա բարձր միջնակարգ դպրոցները: Համալսարան ընդունվում են միջնակարգ դպրոցի 6-րդ դասարանի 2-ամյա նախապատրաստական դասընթացներն ավարտողները: Մասնագիտանում են արհեստագործական դպրոցներում, միջնակարգ և բարձր տիպի տեխնիկական կոլեջներում: Տարրական դպրոցի ուսուցիչներ են պատրաստում 3-ամյա մանկավարժական կենտրոնները (տարրական դպրոցի հիմքի վրա), միջնակարգ դպրոցի՝ 2-ամյա մանկավարժական կենտրոնները և 2-ամյա բարձրագույն մանկավարժական կոլեջները (լրիվ միջնակարգ դպրոցի հիմքի վրա), ինչպես նաև համալսարանները: Բարձրագույն կրթություն են տալիս Մալայայի (1959), Կուալա Լումպուրի Ազգային (1970), Պինանգի (1969) համալսարանները: Կուալա Լումպուրում են գտնըվում Մ-ի Ազգային գրադարանը (1971), Ազգային թանգարանը (1963):

Մ-ի խոշոր գիտական հիմնարկներից են. Բնական կաուչուկի հետազոտական ինստ. (1925, Կուալա Լումպուր), Գյուղատնտեսության ԳՀԻ (1969, Կուալա Լումպուր), Բժշկ. հետազոտությունների ինստ. (1900, Կուալա Լումպուր), Գիտական և արդ. հետազոտությունների ազգային ինստ. (1970): Հումանիտար գիտությունների բնագավառում հետազոտություններ են կատարում Մ-ի Պատմության ընկերությունը, Մալայերենի և մալայական գրականության գործակալությունը (1959), Թամիլերենի ընկերությունը (1957):

### XI. Մամուլը, ռադիոհաղորդումները, հեռուստատեսությունը

Առավել խոշոր թերթերից են. մալայերեն՝ «Ուտուսան Մելայյու» («Utussan Melayu»), «Ուտուսան Մալայսիյա» («Utusan Malaysia»), «Բերիտա Հարիան» («Berita Harian»), անգլ.՝ «Ստրեյթս թայմս» («Straits Times»), «Մալայ մեյլ» («Malay Mail»), չինարեն՝ «Նանյան շանբաո», «Սինչժոու ժիբաո», «Չժունգո բաո», «Մալայ տունբաո», թամիլերեն՝ «Թամիլ նեսան»: 1967-ից գործում է պաշտոնական կառավարական ինֆորմացիոն գործակալությունը՝ Բերնամա: Ռադիոհաղորդումները տրվում են մալայերեն, անգլ., չինարեն և թամիլերեն: Հեռուստատեսությունը գործում է 1963-ից:

### XII. Գրականությունը

Մ-ի գրականությունը ստեղծվում է մալայերենով, չինարենով, մասամբ թամիլերենով, ինչպես նաև անգլերենով: Հիմնականը մալայերենով գրականությունն է: Նոր և նորագույն *մալայական գրականությունն* սկսվում է Աբդուլլահ բին Աբդուլքադիր Մունշիով (1796—1854): Մալայացի հերոսներով առաջին վեպերի հեղինակը Ահմադ բին Հաջի Մուհամմադ Ռաշիդ Թալուն է (1889—1939):

1930—40-ական թթ. գրականության մեջ ուժեղացան հայրենասիրական և հակագաղութային տրամադրությունները: 1945—57-ին առաջատար տեղ գրավեցին ժողովրդի կյանքի հրատապ խնդիրներն արտացոլող բանաստեղծություններն ու պատմվածքները: Քննադատական ռեալիզմի ուղղությամբ վիպագրության զարգացմանը նպաստեցին Հասան բին Մուհամմադ Ալին (ծն. 1928) և հատկապես Ա. Սամադ Սաիդը (ծն. 1935): Աշխատանավորների և քաղ. գործիչների կաշառակերության մասին են գրում արձակագիրներ Հասան Իբրահիմը (ծն. 1938), Ալիաս Ալին (ծն. 1937), Շահնոն Ահմադը (ծն. 1933): Էթնիկական ու սոցիալական հակասություններին են նվիրված Ա. Սամադ Իսմայիլի (ծն. 1924) և այլոց վեպերը: Շատ ստեղծագործություններ կապված են գյուղացիության կյանքում տեղի ունեցած փոփոխությունների հետ (Իբրահիմ Օմար, ծն. 1936, Ցահյի Իսմայիլ, ծն. 1940, Աբդուլլահ Հուսեյն, ծն. 1921, Ալիաս Հարուն, ծն. 1939):

Թամիլերենով գրականությունը ներկայացնում են Կ. Պերումալը, Թ. Շանմուգամը, Բ. Նարայանանը, Մ. Սեթուրամանը: Զգալի տեղ է գրավում չինարենով գրականությունը (Սյույ Դիշան, Սյույ Ցզե, Մա Ին, Ցույ Դա-Ֆու, Բա Ժեն և ուրիշներ): Անգլերենով գրականությունը Մ-ում տարածում է գտել երկրորդ համաշխարհային պատերազմից հետո:

### XIII. Ճարտարապետությունը և կերպարվեստը

Մ-ում հայտնաբերվել են նեոլիթի շրջանի խեցեղեն, մ. թ. ա. I հազարամյակի 2-րդ կեսի մենհիրներ (Մալակկա), բրոնզե զանգակաձև ծիսական թմբուկներ: VIII—XIII դդ. Հնդկաստանի մշակույթի

ազդեցությամբ ձևավորվել է Մ-ի ինքնատիպ արվեստը: Այդ շրջանի բուդդայական քանդակներին բնորոշ է հնդ. պատկերագրության և տեղական էթնիկական առանձնահատկությունների զուգորդումը: VIII—XIII դդ. ճարտարապետությունից պահպանվել են Կեդահի բուդդայական տաճարների ավերակները: XII—XIII դդ. ուժեղացել է չին. արվեստի ազդեցությունը: XVII—XVIII դդ., մահմեդականության տիրապետության շրջանում, կառուցվել են մզկիթներ և դամբարաններ: Սկսած XVI դարից, գաղութարարների ներխուժումով, Մ-ի արվեստում ներդրըվել են եվրոպական գեղարվեստական ձևերը: XIX դ. 2-րդ կեսից ստեղծված Մ-ի քաղաքներին (Պինանգ, Կուալա Լումպուր) բնորոշ են առանձին կառուցված եվրոպական, չին., մալայական ու հնդ. թաղամասերը և ճարտ. համապատասխան ոճերի խառնուրդը: Գյուղական շրջաններում հնուց ի վեր կառուցվում են հիմնակմախքային տներ (մալայացիները՝ ցցագերանների վրա, փայտից ու բամբուկից, չինացիներն ու հնդիկները՝ գետնին, փայտից):



Գրանիտե «թուր»-ստելան Պենկալան-Կեմպասում (մոտ XV դ., Նեգրի-Սեմբիլան)

Ժամանակակից Մ-ում տարածված է տուշով, ջրաներկով, կավճաներկով և յուղաներկով գեղանկարչությունը, հաստոցային և մոնումենտալ քանդակագործությունը: Գեղարվեստական արհեստներից պահպանվել են բրուտագործությունը, ոստայնանկությունը, եղեգնյա հյուսածո իրերի պատրաստումը:

*Գրկ.* Латышева И., Малайзия, М., 1972; Геология Юго-Восточной Азии. Индокитай, Л., 1969; Руднев В. С., Очерки новейшей истории Малайи (1918—1957), М., 1959; Նույնի, Малайя, 1945—1963, М., 1963; Նույնի, Малайзия (1963—1968), М., 1968; Демьянова И. И., Генезис жанра романа в новой малайской литературе, «Народы Азии и Африки», 1972, № 3; Тюрин В. А., К вопросу об истоках малайской культуры, «Вестник истории мировой культуры», 1959, № 3.

**ՄԱԼԱՆԳ** (Malang), քաղաք Ինդոնեզիայում, Արևելյան Ճավա պրովինցիայում, Բրանթաս գետի ափին, Սեմերու լեռան ստորոտում: 422,4 հզ. բն. (1971): Տրանսպորտային հանգույց է, գյուղատնտ. արտադրանքի նախնական վերամշակման կենտրոն: Կան տեքստիլ, փայտամշակման, ծխախոտի ձեռնարկություններ, երկաթուղային արհեստանոցներ, համալսարան: Մ-ի շրջակայքում են հոգեհանգստի աշտարակաձև տաճարներ Կիդալն (XIII դ. կես) ու Սինգասարին (մոտ 1300 թ.) և բրգաձև տաճար Ջագոն (XIII դ.):

**ՄԱԼԱՍԱ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Բաբերդի գավառում: 1914-ին ուներ 60 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Նրանցից շատերը զոհվել են աքսորի ճանապարհին:




**ՄԱԼԱՎԻ** (Malawi), Մալավիի Հանրապետություն (Republic of Malawi), պետություն Արևելյան Աֆրիկայում: Մտնում է Բրիտանական համագործակցության մեջ: Տարածությունը 125 հզ. *կմ*² է, բնակչությունը՝ 5,54 մլն (1978): Մայրաքաղաքը՝ Լիլոնգվե: Վարչականորեն բաժանվում է օկրուգներից կազմված 3 պրովինցիայի:

**Պետական կարգը**: Մ. հանրապետություն է: Գործող սահմանադրությունն ընդունվել է 1966-ին (1970—72-ի ուղղումներով): Պետության և կառավարության գլուխը պրեզիդենտն է (առաջին պրեզիդենտը ընտրվել է ցմահ), որը նշանակում է մինիստրներին և կոմիսարներին, բարձրագույն պաշտոնյաներին, իրավասու է արձակել պառլամենտը ևն: Նա նաև զինված ուժերի գերագույն գլխավոր հրամանատարն է: Կառավարությունը (մինիստրների կաբինետ) կազմված է պրեզիդենտից և նրա նշանակած մինիստրներից, որոնք ազգային ժողովի անդամներ են: Օրենսդրական բարձրագույն մարմինը՝ պառլամենտը, կազմված է պրեզիդենտից ու միապալատ ազգային ժողովից: Ընտրական իրավունքից օգտվում են 21 տարին լրացրած քաղաքացիները: Գավառները գլխավորում են մինիստրները, օկրուգները՝ օկրուգային կոմիսարները: Օկրուգներում և քաղաքներում գործում են կառավարման ընտրովի մարմիններ՝ օկրուգային և քաղաքային խորհուրդներ: Գյուղերում պահպանվել են իշխանության ավանդական մարմինները՝ առաջնորդների խորհուրդները: Դատական համակարգը կազմում են՝ Գերագույն ապելյացիոն դատարանը, բարձր դատարանը, մագիստրատների դատարանները և ավանդական դատարանները:

**Բնությունը**: Մ. գտնվում է տեկտոնական խախտումների ենթարկված մինչքեմբրիի բյուրեղային ապարներից կազմված Աֆրիկական պլատֆորմի հվ-արլ. եզրին: Ռելիեֆում տիրապետում են 1000—1500 *մ* բարձրությունները: Առավելագույն բարձրությունը 3000 *մ* է (Մլանջե




լեռնազանգված): Կան քարածխի, երկաթի, բոքսիտների, մոնացիտային ավազի հանքավայրեր: Կլիման հասարակածային մուսսոնային է: Ամենատաք ամսվա (նոյեմբեր) միջին ջերմաստիճանը 20—27°C է, ամենացուրտ ամսվանը (հուլիս)՝ 14—19°C: Տարեկան տեղումները ցածրավայրերում 750—1000 *մմ* են, բարձրադիր շրջաններում՝ 2000—2500 *մմ*: Ջրագրական ցանցը կազմում են Նյասա (Մալավի) լիճ և նրանից սկիզբ առնող Շիրե (Զամբեզիի վտակ) նավարկելի գետը: Երկրի

Մլանջե զանգվածը



հս-ում, լեռնային կարմրահողերի վրա, տարածված են խոնավ արևադարձային անտառները, մնացած մասերում, լատերիտային շագանակա-կարմրավուն հողերի վրա՝ քսերոֆիտային արևադարձային անտառներն ու սավաննաները: Գետահովիտներում աճում են սրահային անտառներ, 1500 *մ*-ից բարձր լեռնային տափաստաններն են: Բնորոշ կենդանիներն են աֆրիկյան փիղը, գոմշացուլը, ռնգեղջյուրը, զեբրը ևն: Նյասա լիճը հարուստ է ձկներով: Տարածված է *ցեցե* ճանճը: Կենդանական աշխարհի պահպանության համար ստեղծվել է Մ-ի ազգային պարկը:

**Բնակչությունը**: Մ-ում հիմնականում բնակվում են *բանտուների* արլ. խմբին պատկանող ժողովուրդներ, որոնց 55%-ը մալավիներ են: Բնակվում են նաև մակուա, լոմվե, վայաո և այլ ժողովուրդներ: Բնակչության ավելի քան կեսը պահպանում է տեղական հավատալիքները, մնացածը քրիստոնյաներ և մահմեդականներ են: Պաշտոնական լեզուներն են չինյանջան (մալավիների լեզուն) և անգլերենը, տոմարը՝ գրիգորյանը: Կարևոր քաղաքներն են Բլանտայր Լիմբեն, Զոմբան, Լիլոնգվեն:

**Պատմական ակնարկ**: Մ-ի տարածքում վաղուց ի վեր բնակվել են բանտու լեզվախմբի ցեղեր: XV դ. վերջին Նյասա լճի շրջանում կազմավորվել է մալավի ցեղային միությունը, որը շուտով քայքայվել է: XIX դ. 2-րդ կեսին Մ-ում հայտնվել են եվրոպացիները (անգլիացիները ևն): 1891-ին Մեծ Բրիտանիան ստեղծել է Նյասալենդ պրոտեկտորատը (Մ-ի տարածքը): Ազատագրական շարժումն ուժեղացել է երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ և հատկապես հետո: 1944-ին ստեղծվել է Նյասալենդի առաջին քաղ. կազմակերպությունը՝ Աֆրիկյան ազգային կոնգրեսը (ԱԱԿ), որը պայքարել է բնիկների իրավունքների ընդլայնման, իսկ 1953-ին Մեծ Բրիտանիայի դրդմամբ ստեղծված Նյասալենդի և Հարավային Ռոդեզիայի (1980-ից՝ Զիմբաբվե) ֆեդերացիայի ստեղծումից հետո՝ ֆեդերացիան վերացնելու համար: 1959-ին ԱԱԿ հայտարարվել է օրենքից դուրս, փոխարենը ստեղծվել է (1959) Մ-ի կոնգրես (ՄԿ) կուսակցությունը: Ազատագրական շարժման ճնշման տակ 1961-ին գաղութարարները հարկադրված մտցրել են բնիկներին ընտրական իրավունքներ տվող սահմանադրություն: 1963-ի փետր. 1-ին Նյասալենդը ստացել է ներքին ինքնավարություն. 1963-ի դեկտեմբերին դուրս եկել ֆեդերացիայից: 1964-ի հուլիսի 6-ին Նյասալենդը Մ. անվամբ հռչակվել է անկախ պետություն, 1966-ին՝ Մ. Հանրապետություն:

1964-ից Մ. ՄԱԿ-ի անդամ է: 1970-ական թթ. Մ-ի կառավարությունը քաղ. և տնտ. սերտ հարաբերություններ է պահպանել ՀԱՀ-ի և Հարավային Ռոդեզիայի ռասիստական վարչակարգի հետ:

**Քաղաքական կուսակցությունները և արհմիությունները**: Մ-ի կ ո ն գ ր ե ս, միակ քաղ. կուսակցությունն է, հիմնվել է 1959-ին: Մ-ի ա ր հ մ ի ու թ յ ու ն ն ե ր ի կ ո ն գ ր ե ս, ստեղծվել է 1964-ին:

**Տնտեսա-աշխարհագրական ակնարկ**: Մ. հետամնաց ագրարային երկիր է, կախման մեջ է նախկին մետրոպոլիայից և ՀԱՀ-ից: Տնտեսության հիմքը գյուղատնտեսությունն է: Խոշոր պլանտացիաները պատկանում են եվրոպական, հատկապես անգլ., ընկերություններին: Արտահանության համար մշակում են թեյ, ծխախոտի բարձրորակ սորտեր, գետնընկույզ, բամբակ, եղրիզենի (տունգ), կաուչուկ, ներքին սպառման համար՝ եգիպտացորեն, կորեկ, սորգո, բրինձ, ընդավորներ, մանիոկա, կարտոֆիլ: Անասնապահությունը թույլ է զարգացած: Զբաղվում են նաև ձկնորսությամբ:

Կա լեռնային արդյունաբերություն: Արդյունահանում են քիչ քանակությամբ երկաթի հանքաքար, բոքսիտներ, կիանիտներ: 1978-ին արտադրվել է 276 մլն *կվտ·ժ* էլեկտրաէներգիա: Մշակող արդյունաբերությունը ներկայացված է գլխավորապես գյուղատնտ. հումքի վերամշակման ձեռնարկություններով: Կան ցեմենտի, շաքարի գործարաններ, ծխախոտի, թեյի վերամշակման, տեքստիլ, բամբակազտիչ, կարի ֆաբրիկաներ, սննդի և այլ ձեռնարկություններ, պարարտանյութերի արտադրություն, շինանյութի մթերում: Ավտոճանապարհների երկարությունը 3020 *կմ* է (1979), երկաթուղիներինը՝ 566 *կմ* (1979): Բլանտայր Լիմբեում և Լիլոնգվեում կան միջազգային օդանավակայաններ: Արտաքին առևտրական գործընկերներն են Մեծ Բրիտանիան, Զիմբաբվեն, ՀԱՀ, ԱՄՆ, Ճապոնիան, ԳՖՀ: Արտահանում է ծխախոտ, թեյ, գետնընկույզ, բուրդ, եղրիզենու յուղ, բամբակ, ներմուծում՝ պարեն, տեքստիլ արտադրանք, նավթամթերք, սև և գունավոր մետաղներ ու դրանցից պատրաստված շինվածքներ:

Դ ր ա մ ա կ ա ն մ ի ա վ ո ր ը կվաչան է, որը հավասար է ամերիկյան 1,22 դոլլարի (1979):

**Բժշկա-աշխարհագրական բնութագիրը**: 1972-ին ծնունդը կազմել է 1000 բնակչին՝ 50,5, մահացությունը՝ 26,5, մանկական մահացությունը 1000 ողջ ծնվածին՝ 142,1: Գերակշռում են վարակիչ մակաբուծական հիվանդությունները: Տարածված են տուբերկուլյոզը, տիֆերը, պարատիֆերը, դիզենտերիան, վեներական հիվանդությունները, բորը, գեոհելմինթոզները, մալարիան: 1971-ին գործել է 90 հիվանդանոց՝ 6,0 հզ. մահճակալով (1000 բնակչին՝ 1,3 մահճակալ), մայրության և մանկության պահպանության 35 կենտրոն, բորի դեմ պայքարի շարժական 3 կենտրոն, 6 բորոտանոց: 1975-ին աշխատել են 104 բժիշկ (48,5 հզ. բնակչին՝ 1 բժիշկ), 7 ատամնաբույժ, 4 դեղագործ և մոտ 1155 միջին բուժաշխատող: 1965-ից անց են կացվում ծաղիկ հիվանդության կանխարգելիչ պատվաստումներ:

**Լուսավորությունը և գիտական հիմնարկները**: Բնակչության մոտ 85%-ն անգրագետ է: Պարտադիր կրթության մասին օրենք չկա: Տարրական դպրոցը 8-ամյա է, միջնակարգը՝ 6-ամյա: Պրոֆտեխնիկական կրթություն են ստանում տարրական դպրոցի հիմքի վրա (1—4 տարի): Տարրական դպրոցի ուսուցիչներ են պատրաստում միջնակարգ դպրոցի հիմքի վրա (2 տարում): Միակ բարձրագույն ուս. հաստատությունը Մ-ի համալսարանն է (1964, Բլանտայր Լիմբե): Կան մի քանի կոլեջներ՝ գյուղատնտեսական (Լիլոնգվե), մանկավարժական և Չանսելլոր-կոլեջը, գործում են նաև պոլիտեխնիկական և վարչական ինստ-ները (բոլորն էլ՝ Բլանտայր Լիմբեում): Այս ուս. հաստատություններում լրիվ բարձրագույն կրթություն չեն ստանում: Խոշոր գրադարանը Չանսելլոր-կոլեջինն է: Բլանտայր Լիմբեում է Մ-ի թանգարանը (1964):

Գիտական հիմնարկներից է Մ-ի երկրաբանական ծառայությունը (1921):

1940-ական թթ. վերջից ստեղծվել են գյուղատնտ. փորձակայաններ:

**Մամուլը, ռադիոհաղորդումները**: Առավել կարևոր պարբերական հրատարակություններն են. «Աֆրիկան» («The African», 1950-ից)՝ երկշաբաթաթերթ անգլ., չինյանջա և տումբուկա լեզուներով, «Դիս իզ Մալավի» («This is Malawi», 1964-ից)՝ կառավարական ամսագիր, «Մալավի գավըրնմընթ գազեթ» («Malawi Government Gazette», 1894-ից)՝ կառավարական շաբաթաթերթ, «Մալավի նյուս» («Malawi News», 1959-ից)՝ շաբաթաթերթ անգլ., չինյանջա և տումբուկա լեզուներով, «Դեյլի թայմս» («Daily Times», 1895-ից)՝ օրաթերթ անգլ. և չինյանջա լեզվով: Մ-ի ռադիո կառավարական ծառայությունը հիմնվել է 1964-ին:

**Ժողովրդական արվեստը**: Նյանջա և չևա ժողովուրդների բնակավայրերի հիմնական տիպը ցանկապատված, խառնիխուռն կառուցապատված գյուղն է: Նգոնիների խրճիթները տեղադրված են շրջանաձև, կենտրոնում՝ անասնանոցը: Կան շրջանաձև կամ քառանկյուն հատակագծով բնակելի տներ: Խրճիթները կառուցում են շիվերից հյուսած, ներսից կավածեփ հիմնակմախքով, եղեգնյա ծածկով: Տարածված է բրուտագործությունը, փայտի քանդակագործությունը:

*Գրկ.* Яблочков Л. Д., Коренное население Британской Центральной Африки, в кн.: Африканский этнографический сборник, [т]. 2, М., 1958, гл. 3; Дёмкина Л. А., Крах федерации Родезии и Ньясаленда, М., 1965; Pike J. G., Malawi. A Political and Economic History, N. Y.—[a.o.], [1968].

**ՄԱԼԱՐԻԱ** (իտալ. malaria, < mala aria — վատ օդ), վարակիչ պրոտոզոային հիվանդություն. բնորոշվում է պարբերաբար ընթացող տենդային նոպաներով (տես *Տենդ*), հետզհետե աճող սակավարյունությամբ, պարենքիմային օրգանների (փայծաղ, լյարդ) և ոսկրածուծի ախտահարմամբ, երկարատև ընթացքով ու կրկնություններ տալու հատկությամբ: Մ-ի հարուցիչը պլազմոդիում սեռի միաբջիջ նախակենդանիներն են, որոնք իրարից տարբերվում են մորֆոլոգիապես և առաջացրած հիվանդության բնույթով: Մ-ի մակաբույծներն անցնում են զարգացման երկու փուլ. անսեռ (շիզոգոնիա) և սեռական (սպորոգոնիա): Շ ի զ ո գ ո ն ի ա յ ի դեպքում վարակված մոծակի խայթոցի ժամանակ թքից մարդու արյան մեջ են անցնում պլազմոդիումների սպորոզոիտներ, որոնք արյան կամ ավիշի հոսքով հասնում են լյարդի բջիջներ, ուր կատար-

վում է հյուսվածքային (արտաէրիթրոցիտային) շիզոգոնիա: Առաջացած հյուսվածքային մերոզոիտների մի մասը թափանցում է էրիթրոցիտների մեջ և էրիթրոցիտային շիզոգոնիայի փուլում վերածվում շիզոնտների, որոնց հետագա զարգացումից և բաժանումից առաջանում են էրիթրոցիտային մերոզոիտներ: Այնուհետև էրիթրոցիտները քայքայվում են, և ազատված մերոզոիտները ախտահարում նոր էրիթրոցիտներ: Մերոզոիտների մի մասը վերածվում է գամետոցիտների (սեռական ձևեր), որոնց հետագա զարգացումը հնարավոր է միայն փոխանցողի՝ մոծակի օրգանիզմում: Pl. vivax-ի և Pl. malariae-ի շիզոգոնիայի բոլոր փուլերը հայտնաբերվում են ծայրամասային արյան մեջ, Pl. falciparum-ինը՝ խորանիստ օրգանների մազանոթներում: Հիվանդության շատ ծանր ընթացքի դեպքում, բացի երիտասարդ շիզոնտներից, արյան մեջ հայտնաբերվում են նաև կիսահասուն, հասուն և այլ ձևեր:

Սպորոգոնիան կատարվում է անոֆելես սեռի *մոծակների* մոտ, արյուն ծծելիս վերջիններիս օրգանիզմ են ներթափանցում մակրո- և միկրոգամետոցիտները: Սպորոգոնիայի տևողությունը կախված է արտաքին միջավայրի ջերմաստիճանից (բարձր ջերմաստիճանում ավելի արագ է կատարվում, ամենանպաստավոր ջերմաստիճանը 28—30°C է): Մ-ի կլինիկական արտահայտությունները և ընթացքը պայմանավորված են պլազմոդիումների տեսակով. տարբերում են եռօրյա, քառօրյա և տրոպիկական Մ.: Եռօրյա Մ. (Malaria tertiana), հարուցիչն է Pl. vireax-ը: Գաղտնի շրջանը 7—21 օր է, հս. շտամի դեպքում՝ 8—14 ամիս: Որպես կանոն, նոպաները կրկնվում են ամեն 3-րդ օրը: Սովորաբար ընթացքը բարեհաջող է, երբեմն լինում է ծանր և կարող է հանգեցնել մահվան: Քառօրյա Մ. (Malaria quartana), հարուցիչը Pl. malariae-ն է: Գաղտնի շրջանը 21—42 օր է: Նոպաները կրկնվում են ամեն 4-րդ օրը: Երբեմն ընթանում է ամենօրյա կամ երկօրյա ջերմային նոպաներով, ընթացքը բարեհաջող է: Տրոպիկական Մ. (Malaria tropica), հարուցիչն է Pl. falciparum-ը: Գաղտնի շրջանը 9—16 օր է: Նոպաները մեծ մասամբ անկանոն բնույթի են և կրկնվում են օրընդմեջ կամ ամեն օր: Մ-ի այս ձևն ավելի ծանր է ընթանում, առաջացնում է բարդություններ (կոմատոզ վիճակ) և հաճախ մահվան պատճառ է դառնում: Հազվադեպ պատահում է նաև Մ-ի 4-րդ ձևը, որի հարուցիչն է Pl. ovale-ն: Կլինիկական ընթացքը նման է եռօրյա Մ-ին: Ախտորոշումը հիմնված է կլինիկական տվյալների, համաճարակագիտական անամնեզի և հատկապես արյան մեջ Մ-ի հարուցիչների հայտնաբերման վրա:

Բուժումը. ժամանակակից դեղամիջոցներն են՝ զալուխինը, քլորոխինը, ռեզոխինը, դելագիլը, պլակվենիլը, ամոդիախինը ևն, որոնք արդյունավետ են Մ-ի բոլոր տեսակների ժամանակ:

Կանխարգելումը. վարակի աղբյուրի և հիվանդների վաղ հայտնաբերում՝ բնակչության հետազոտման, ջերմող հիվանդների և Մ-ի տեսակետից անբարենպաստ բնակավայրերից ժամանած անձանց արյան ստուգման միջոցով: Պայքար փոխանցողների դեմ. անոֆելոգեն ջրականգերի վերացում, մոծակների թրթուրները ոչնչացնելու նպատակով՝ լարվիցիդների օգտագործում, թևավոր ձևերի դեպքում՝ միջատասպան (ԴԴՏ, հեքսաքլորան, քլորոֆոս ևն) և մոծակներին վանող (ռեպելենտ) միջոցներ: Մ. ամենատարածված հիվանդություններից է, Հայաստանի երկրամասային ախտաբանությունում նախկինում գրավել է առաջնակարգ տեղ: 1955-ից Մ. վերացվել է որպես զանգվածային հիվանդություն, իսկ 1963-ից ՀՍՍՀ-ում չի արձանագրվել Մ-ի տեղական ծագում ունեցող ոչ մի դեպք: ՀՍՍՀ-ում Մ-ի վերացման աշխատանքներում մեծ ավանդ ունեն Ք. Փիրումովը, Շ. Մաթևոսյանը, Մ. Սարզսյանը, Ա. Սատուրյանը, Ա. Չուբկովան և ուրիշներ:

*Գրկ.* Մալարիա, Ե., 1950: Մաթևոսյան Շ.Մ., Գասպարյան Տ.Ս., Պարազիտ նախակենդանիներ և որդեր, Ե., 1959: Кассирский И.А., Плотников Н.Н., Болезни жарких стран, 2 изд., М., 1964.

*Կ. Ռսկանյան*

**ՄԱԼԱՔԻՏ** (< հուն. μαλάκη — մոլոշավարդ, տերևի գույնի նմանությամբ), կարբոնատների դասի միներալ: Քիմ. կազմը՝ $Cu_2[(OH)_2CO_3]$: Բյուրեղագիտական համակարգը մոնոկլինային է: Բյուրեղները հազվադեպ են: Սովորաբար առաջացնում է երիկամաձև կեղևիկներ, ստալակտիտանման, թելավոր կառուցվածքով ագրեգատներ: Գույնը՝ վառ կանաչ, փայլը՝ ապակու, ալմաստի, մետաքսի: Կարծրությունը՝ 3,5—4, խտությունը՝ 4050 *կգ/մ³*: Հանդիպում է պղնձի հանքավայրերի օքսիդացման զոնայում: ՍՍՀՄ-ում խոշոր կուտակումները հայտնի են Ուրալում: ՀՍՍՀ-ում կա Ալավերդու, Շամլուղի, Ղափանի և այլ պղնձի հանքավայրերում: Խիտ Մ. օգտագործվում է որպես դեկորատիվ քար և պղնձի հանքանյութ (պարունակում է մոտ 57% պղինձ), իսկ հողախառը՝ որպես ներկանյութ՝ «մալաքիտային կանաչ»:

**ՄԱԼԱՔԼՈՒ**, վաղ բրոնզեդարյան և ուրարտական մշակույթների հուշարձան Մասիս լեռան հյուսիս-արևմտյան ստորոտին, Իգդիրից Մարգարա տանող ճանապարհի մոտ, Մալաքլու գյուղից ոչ հեռու: Մ-ում, դեռևս մ. թ. ա. III հազարամյակում, եղել է բնակավայր, որը հետագայում ծածկվել է տուֆե լավայի շերտով: Հնավայրում 1913-ին պեղումներ է կատարել Պ. Ֆ. Պետրովը: Հայտնաբերվել են մ. թ. ա. III հազարամյակի աշխատանքային բազմաթիվ գործիքներ, զարդարուն խեցեղեն, կավե զոհարաններ, աղյուսներ, ինչպես նաև մ. թ. ա. VIII—VII դդ. բրոնզե և երկաթե իրերով, քարե և կավե կնիքներով աճյունասափորներ: Մ-ից գտնված նյութերը տարել են Թիֆլիս և այժմ պահվում են Վրաստանի պատմության պետ. թանգարանում:

*Գրկ.* Пиотровский Б.Б., Археология Закавказья, Л., 1949; Куфтин Б.А., Урартский «колумбарий» у подошвы Арарата и куро-аракский энеолит, «Вестник Государственного Музея Грузии», XIII в., 1944.

*Գ. Արեշյան*

**ՄԱԼԱՔՅԱՆ** Աշոտ Հակոբի, Վեռնոյ Անրի (ծն. 15.10.1920, ք. Ռոդոստո, Թուրքիա), ֆրանսահայ կինոռեժիսոր: 1930-ից բնակվում է Ֆրանսիայում: Էքսան-Պրովանսի ֆրանս. լիցեյն ավարտելուց հետո անցել է ժուռնալիստական գործունեության: 1945-ին Անրի Վեռնոյ կեղծանունով «Մարսեյլեզ» թերթում հրապարակել է հոդվածների շարք Հայկական հարցի մասին: 1948-ից աշխատում է կինոյում: Նկարահանել է կարճամետրաժ զվարճալի ֆիլմեր Ֆեռնանդելի մասնակցությամբ: 1951-ին ստեղծել է իր առաջին՝ «Սեղան մեռածների համար» լիամետրաժ ֆիլմը, որի շնորհիվ Մ. դասվել է Ֆրանսիայի լավագույն կինեմատոգրաֆիստների շարքը: Հուլիվուդն սկսել է պայմանագրեր կնքել Մ-ի հետ: Հետագայում Ժ. Գաբենի, Ա. Դելոնի, Ժան-Պոլ-Բելմոնդոյի, Օ. Շարիֆի և այլ դերասանների համագործակցությամբ ստեղծել է 40-ից ավելի կինոնկար: Լավագույններից են՝ «Արգելված պտուղ» (1952), «Հանրային թշնամի № 1» (1953), «Մաքսիմ» (1956), «Պրեզիդենտ» (1962): 1978-ին ստեղծել է «Եվ ինչպես... Իկար» ֆիլմը, որը մերկացնում է բուրժ. աշխարհի բարքերը: Մ. երկու անգամ այցելել է ՍՍՀՄ, 1980-ին՝ նաև Հայաստան: Պարգևատրվել է «Պատվո լեգեոն» շքանշանով:

*Գրկ.* Մխիթարյան Ս., Ֆրանսերենով արտահայտվող հայ արվեստագետներ, Փարիզ, 1969:

*Հ. Լիլոյան*

**ՄԱԼԳԱՏՆԵՐ**, ժողովուրդ, *Մադագասկարի* հիմնական բնակչությունը: Թիվը՝ մոտ 7,9 մլն (1975): Խոսում են մալգաշերեն: Մ-ի մի մասը քրիստոնյաներ են, մյուս մասը՝ կաթոլիկներ: Պահպանվել են նաև հին հավատալիքների վերապրուկները (հատկապես՝ նախնիների պաշտամունքը): Ընդունված է Մ-ին բաժանել մի քանի էթնիկական խմբերի, որոնցից առավել կարևորներն են իմերինան, բեցիլեուն, բեցիմիսարական, սակալական, անտանդրուին, անտաևուսին: XIX դ. վերջից Մ-ի զարգացումն ընթանում է կապիտալիստական ուղիով: Առաջացել են տեղական բուրժուազիա, բանվոր դասակարգ և մտավորականություն:

**ՄԱԼԴԱՇ**, գյուղ Հայկական ՍՍՀ Գորիսի շրջանում, շրջկենտրոնից 37 *կմ* հարավ-արևմուտք: Միավորված է Սվարանցի անասնապահական սովետական տնտեսության հետ: Ունի ակումբ, գրադարան, բուժկայան:

**ՄԱԼԴԻԲԱԵՎ** Աբդիլաս (1906—1978), կիրգիզ սովետական կոմպոզիտոր և երգիչ (տենոր): ՍՍՀՄ ժող. արտիստ (1939): ՍՄԿԿ անդամ 1939-ից: 1933-ից եղել է Կիրգ. երաժշտա-դրամատիկական ստուդիայի (1942-ից՝ Կիրգ. օպերայի և բալետի թատրոն) դերասան: 1940—41-ին, 1947—50-ին սովորել է Մոսկվայի կոնսերվատորիայում (Գ. Ի. Լիտինսկու, ապա Վ. Գ. Ֆերեի դասարաններում): Կոմպոզիտորներ Վ. Ա. Վլասովի և Վ. Գ. Ֆերեի հետ ստեղծել է կիրգ. առաջին երաժշտական դրամաներն ու օպերաները՝ «Աջալ օրդունա» (1938), «Այչուրեկ» (1939), «Մանաս» (1946), «Տոքտոգուլ» (1958) ևն, ինչպես և Կիրգ. ՍՍՀ պետական հիմնի երաժշտությունը: Երգել է կիրգ

երաժշտական դրամաներում և օպերաներում: Կիրգ. սովետական երգի հիմնադիրն է: 1939—67-ին եղել է Կիրգիզիայի կոմպոզիտորների միության նախագահը: Արժանացել է Կիրգ. ՍՍՀ պետ. մրցանակի (1970):

**ՄԱԼԴԻՎՅԱՆ ԿՂԶԻՆԵՐ**, կորալային կղզիների արշիպելագ Հնդկական օվկիանոսում, Հնդստան թերակղզու հարավարևմուտքում: Մ. կ-ում է գտնվում *Մալդիվներ* պետությունը:



**ՄԱԼԴԻՎՆԵՐ** (Maldives), Մալդիվյան Հանրապետություն (Republik of Maldives), պետություն Հարավային Ասիայում: Գտնվում է Հնդկական օվկիանոսի Մալդիվյան կղզիներում, Շրի Լանկա կղզուց հվ-արմ.: Տարածությունը 298 *կմ²* է, բնակչությունը՝ մոտ 150 հզ. (1979), մալդիվներ: Պաշտոնական կրոնը մահմեդականությունն է, լեզուն՝ մալդիվերենը: Մայրաքաղաքը՝ Մալե: Վարչականորեն բաժանվում է 19 կղզային խմբի (ատոլների):

**Պետական կարգը**: Մ. հանրապետություն է: Գործող սահմանադրությունն ուժի մեջ է 1972-ից: Պետության և կառավարության գլուխը պրեզիդենտն է, որը հաստատում է պառլամենտի ընդունած օրինագծերը, նշանակում մինիստրներին, դատավորներին և այլ բարձրաստիճան պաշտոնյաների, հայտարարում է արտակարգ դրություն, շնորհում է ներում ևն: Օրենսդրական իշխանության բարձրագույն մարմինը միապալատ պառլամենտն է՝ մեջլիսը: Ընտրական իրավունքից օգտվում են 21 տարին լրացրած բոլոր քաղաքացիները:

**Բնությունը**: Մալդիվյան արշիպելագի կղզիները միջօրեականի ուղղությամբ ձգվող ստորջրյա լեռնաշղթայի վրա առաջացած 2 զուգահեռ կորալային շղթաներ են (Լաքադիվյան և Չագոս կղզիների միջև)՝ կազմված ավելի քան 2 հզ. կղզիներից, որոնց մեծ մասը բնակեցված չէ: Կղզիները շրջապատված են արգելախութերով: Կլիման հասարակածային է, մուսսոնային: Տարեկան ջերմաստիճանը 24-ից 30°C է, տեղումները՝ մոտ 2500 *մմ*: Կան կոկոսյան արմավի, բանանի պուրակներ, հանդիպում են հացի ծառեր:

**Պատմական տեղեկանք**: Մ. թ. I հազարամյակում Մ-ում բնակվել են սինհալներ, հնդիկներ, մալայացիներ, որոնք դավանում էին բուդդայականություն: XII դարից սկսվել է մահմեդականության ներթափանցումը: XIV դ. Մ-ի տարածքում առաջացել է սուլթանություն: 1558-ին պորտուգալացիները զավթել են Մ., սակայն 1573-ին վտարվել այնտեղից: XVII դ. 2-րդ կեսին սուլթանությունն ընկել է Ցեյլոնի հոլանդական կառավարիչների իշխանության տակ, իսկ 1796-ին Մ-ում հաստատվեց Մեծ Բրիտանիայի ազդեցությունը: 1887-ին Մ. դարձան բրիտ. պրոտեկտորատ, ունեին ներքին ինքնավարություն: 1948-ին սուլթանի հետ կնքած պայմանագրով Մեծ Բրիտանիան լայն արտոնություններ ստացավ երկրում: 1956-ի վերջին Գան կղզում սկսվեց բրիտ. ռազմ. բազայի կառուցումը: 1960-ի պայմանագրով Գան կղզին 30 տարով վարձակալման տրվեց Մեծ Բրիտանիային. վերջինս խոստացավ տնտ. օգնություն ցույց տալ և ճանաչել Մ-ի կառավարության իրավասությունը երկրի ամբողջ տարածքի նկատմամբ: 1965-ի հուլիսի 26-ին Մ. հռչակվեցին անկախ, մտան ՄԱԿ-ի մեջ: 1966-ին դիվանագիտական հարաբերություններ հաստատվեցին Մ-ի և ՍՍՀՄ-ի միջև: 1968-ին Մ. հռչակվեցին հանրապետություն: Մ-ի կառավարությունը վարում է չմիացման քաղաքականություն, հանդես է գալիս Հնդկական օվկիանոսը միջուկային զենքից զերծ գոտու վերածելու օգտին:

**Տնտեսությունը**: Տնտեսությունը հիմնվում է ձկնորսության և ծովային արդյունագործության վրա, որոնք տալիս են արտահանության արժեքի 97%-ը: Ձկան և ձկնամթերքների առևտրի վրա իշխում է պետ. մոնոպոլիան: Ձկնորսական նավատորմում կա ավելի քան 4 հզ. փոքր, առագաստավոր և թիավոր մակույկ: Արդյունահանվում են մարգարիտ, խեցիներ, կորալներ: Գյուղատնտեսությունը թույլ է զարգացած: Հողը պատկանում է պետությանը: Վարձակալ հողագործները պետությանն են տալիս բերքի 1/2-ը: Մշակում են բրինձ, բանջարեղեն, հացի ծառ, մանգո, բանան, ցիտրուսներ, կոկոսյան արմավ: Անասնապահություն գործնականորեն չկա, որոշ չափով զարգացած է թռչնաբուծությունը: Արդյունաբերությունը ներկայացված է մի քանի մանր տնայնագործական ձեռնարկություններով: Կա ձկնորսական նավաշինություն, մրգի պահածոների, կորալե իրերի արտադրություն ևն: Տնտեսության մեջ կարևոր դեր ունեն տուրիզմը (40 հզ. տուրիստ, 1979) և նամականիշերի թողարկումը: Տրանսպորտային միջոցներն են առագաստային նավերը և մոտորանավակները: 1979-ին ավտոպարկում կար 160 ավտոմեքենա, առևտրական նավատորմում՝ 60 նավ: Մալեն «բաց նավահանգիստ է»: Արտաքին առևտրական գործընկերներն են Շրի Լանկան, Հնդկաստանը, Սինգապուրը: Արտահանում է ձուկ, կոպրա, ներմուծում՝ պարենային և արդ. ապրանքներ: Դրամական միավորը մալդիվական ռուփին է: 1 մալդիվական ռուփին հավասար է Շրի Լանկայի 1 ռուփիին:




**Լուսավորությունը**: Անգրագետ է երկրի բնակչության 80%, կրթական միասնական համակարգ չունի, տարրական դպրոցներ (ուս. տևողությունը 3—4 տարի) ունեն բոլոր կղզիները: Մալեում կա նախապատրաստական 1 և միջնակարգ 2 դպրոց (5—6 տարի): Տարրական դպրոցներում ուսուցումը տարվում է մալդիվերեն, միջնակարգում՝ անգլ. լեզուներով: Կրոնի ուսուցումը պարտադիր է: Հատուկ միջնակարգ և բարձրագույն ուս. հաստատություններ չունի: Մալեում է գտնվում երկրում միակ պետ. հանրային գրադարանը (12 հզ. կտոր գիրք):

**ՄԱԼԵՋՅԱՆ** Հովսեփ Ստեփանի (1801, Կ. Պոլիս —18.7.1881, Կ. Պոլիս), մանկավարժ, բանաստեղծ: Մոտ կես դար դասավանդել է Պոլսի Մայր վարժարանում, Սկյուտարի ճեմարանում, Ռոբերտ քոլեջում և այլ դպրոցներում: Հրատարակել է «Հրաժանգ սիրո» (1870), «Առակ տասն կուսանաց» (1874) ժողովածուները, «Անիվ ջրհորո» (1876) գրքույկը, «Բառատետր ռամկորենե ի հայերեն» (1874) աշխատությունը: Գ. *Ստեփանյան*

**ՄԱԼԵՋՅԱՆ** Վահան Ֆրանկլյուրի [21.9. 1871, Սուլինա (Ռումինիա)—1966, Նիցա], հայ գրող, թարգմանիչ, հասարակական գործիչ: 1871-ին Մալեզյանների ընտանիքը տեղափոխվել է Կ. Պոլիս: 1887-ին Մ. ավարտել է Կ. Պոլսի հայկ. կրթարանը, 1895-ին՝ իրավաբանական վարժարանը: 1896-ին տեղափոխվել է Մերսին: Հարել է հնչակյան կուսակցությանը, 1897-ին բանտարկվել է, մեկ տարի անց ազատվել, այնուհետև մեկնել է Եգիպտոս, որտեղ զբաղվել է իրավաբանությամբ: Մ. Եգիպտոսում ռամկավար կուսակցության հիմնադիրներից է (1908): Ապրել է Կահիրեում, Բրյուսելում, Փարիզում, Նյու Յորքում, ապա՝ Նիցայում, վարել ՀԲԸՄ ընդհանուր քարտուղարի պաշտոնը: Գրական ասպարեզ է իջել 1880-ական թթ. վերջերին, տպագրվելով «Մասիս» և «Արևելք» պարբերականներում՝ «Զեփյուռ» ծածկանունով: Նրա չափածո և արձակ գործերի

մի մասն ամփոփվել է «Մրմունջք» (1890) ժողովածուում: Աշխատակցել է «Արևելյան մամուլ», «Մաղիկ», «Անահիտ», «Բանբեր գրականության և արվեստի», «Շիրակ» և այլ պարբերականների: Հրատարակել է «Հուշարձան մը Արփիարյանի» (1911) կենսագրական գրքույկը, «Անիծյալը» (1892) և «Կերոններ» (1912) չափածո, «Տարագրի մը հուշատետրը» (1915) արձակ գործերը: Ֆրանսիայում ապրած տարիներին լույս է ընծայել «Անցած օրեր...» (1927), «Կարապի երգը» (1949), «Հոգիի ձայներ» (1949), «Մեծ հայոյ Հովսեփ Մալեզյան պատվելի» (1949), «Ճամբուս վրայ» (1950, հուշագրություններ, նամակներ և այլ նյութեր), «Ճամբուս ծայրը» (հ. 1—2, 1954—55, հուշեր, հոդվածներ, զանազան գրություններ) գործերը: Թարգմանություններ է կատարել Ա. Բարբյուսից, Վ. Հյուգոյից, Մ. Մետեռլինկից, Ա. Սամենից և ուրիշներից: Գրել է նաև ֆրանսերեն և թուրքերեն:

*Գրկ.* Բանաստեղծ Վահան Մալեզյանի ազգային ու գրական վաթսունամյա գործունեությունը, Փարիզ, 1951: Զոնամատյան Վահան Մալեզյանի ութսունհինգամյակին առթիվ, Փարիզ, 1956:

*Գ. Ստեփանյան*

**ՄԱԼԵՂ,** հայկական հնագույն գյուղատեղի Ադրբեջանական ՍՍՀ Քելբաջարի շրջանում, Թարթառ գետի ձախ ափին, թավուտ անտառում: Պահպանվել են միջնադարյան եկեղեցու ավերակներ ու շիրմաքարեր: Գյուղն ավերել ու ամայացրել են օտար ասպատակողները XII դ.: Մ. հնում մտել է Մեծ Հայքի Արցախ նահանգի Ծարավ գավառի մեջ:

**ՄԱԼԵՎԻՉ** Կազիմիր Սևերինովիչ (1878—1935), ռուս սովետական նկարիչ: 1904—1905-ին սովորել է Մոսկվայի գեղանկարչության, քանդակագործության և ճարտարապետության ուսումնարանում, 1905—1910-ին՝ Ֆ. Ի. Ռերբերգի արվեստանոցում: Մասնակցել է «Բուբնովի վալետ» (1910), «Օսլինի խվոստ» (1912), ֆուտուրիստների «0,10» (1915—16) ցուցահանդեսներին: 1900—10-ական թթ. ձգտել է զուգորդել *կուբիզմի* և *ֆուտուրիզմի* սկզբունքները («Խոտհունձ», 1909): Հետագայում դառնալով *աբստրակտ արվեստի* հիմնադիրներից՝ առարկայական ձևը փոխարինել է հարթության վրա գույնով հակադիր երկրաչափական պարզագույն տարրերի համադրումներով (*սուպրեմատիզմ*): Դա հանգեցնում էր գեղարվեստական ստեղծագործության հասարակական և ճանաչողական բնույթի բացասման («Սև քառակուսի», 1913): 1918-ին ձևավորել է Վ. Վ. Մայակովսկու «Միստերիա-բուֆֆ»-ի առաջին բեմադրությունը: 1920-ից հարել է *արտադրական արվեստ* գեղարվեստական շարժմանը: 1923—27-ին եղել է Լենինգրադի Գեղարվեստական մշակույթի ինստ-ի (Ինխուկ) դիրեկտոր: Այս շրջանում զբաղվել է պլաստիկ արվեստների ձևական խնդիրների ուսումնասիրմամբ, մշակել ձևաստեղծման, տարածական կոմպոզիցիաների նախագծեր: 1930-ական թթ. փորձել է վերադառնալ կերպարային գեղանկարչությանը՝ դիմելով սովետական թեմատիկային («Կարմիր փայտիկով աղջիկը», 1932, վերոհիշյալ աշխատանքները՝ Տրետյակովյան պատկերասրահում, Մոսկվա):

Կ. Մալևիչ. «Սյուպրեմ» («Բարձրագույնը», մինչև 1915, Քաղաքային թանգարան, Ամստերդամ)



**ՄԱԼԵՐԲ** (Malherbe) Ֆրանսուա (մոտ 1555—1628), ֆրանսիացի բանաստեղծ, ֆրանսիական *կլասիցիզմի* հիմնադիրը պոեզիայում: Հիմնականում գրել է ներբողներ, ստանսներ՝ նվիրված թագավորական ընտանիքի անդամներին: Մ. հայտնի է լեզվի և բանաստեղծության ասպարեզում կատարած իր ռեֆորմով: Ի հակադրություն իր նախորդների՝ նա պահանջում էր ֆրանսերենը մաքրել հուն. և լատ. փոխառություններից, հնաբանություններից, գավառաբանություններից և հենվել Փարիզի բնակչության լայն շրջանների կենդանի խոսակցական լեզվի վրա:




**ՄԱԼԹԱ** (Malta), Մալթայի Հանրապետություն (Republika ta' Malta), պետություն Մալթայան արշիպելագում, Միջերկրական ծովի կենտրոնական մասում: Մտնում է Բրիտանական համագործակցության մեջ: Տարածությունը 316 *կմ²*, բնակչությունը՝ 311,4 հզ. (1979), մայրաքաղաքը՝ Վալետա:

**Պետական կարգը:** Մ. հանրապետություն է: Պետության գլուխը պրեզիդենտն է, օրենսդրական մարմինը՝ ներկայացուցիչների պալատը, գործադիր իշխանությունն իրականացնում է կառավարությունը: Ընտրական իրավունքից օգտվում են 18 տարին լրացրած բոլոր քաղաքացիները:

**Բնությունը:** Արշիպելագն ընդգրկում է 2 մեծ (Մալթա, 246 *կմ²* և Գոցո, 67 *կմ²*) և մի շարք փոքր կղզիներ: Հվ. և հվ-արմ. ափերը զառիթափ են, հս. և հս-արլ-ը՝ ցածր, հարմար նավահանգիստներով: Ռելիեֆում գերիշխում են մինչև 240 *մ* բարձրության կարստային սարավանդները (Մալթա կղզում): Կլիման միջերկրածովյան է: Փետրվարի միջին ջերմաստիճանը 12°C է, օգոստոսինը՝ 25°C, տարեկան տեղումները՝ մոտ 530 *մմ*: Մակերևութային հոսքն աղքատ է: Տիրապետում է թփուտային բուսականության միջերկրածովյան տիպը:

**Բնակչությունը:** 98%-ը մալթացիներ են: Բնակվում են նաև անգլիացիներ, իտալացիներ: Պաշտոնական լեզուներն են մալթայերենն ու անգլերենը, պաշտոնական տոմարը՝ գրիգորյանը, տիրապետող կրոնը՝ կաթոլիկությունը: Բնակչության խտությունը 1 *կմ²* վրա ավելի քան 1000 մարդ է (1979): Գլխավոր քաղաքներն են Սլիման և Վալետան:

**Պատմական ակնարկ:** Մ-ում մարդկային առաջին բնակավայրերն առաջացել են մ. թ. ա. IV հազարամյակում: Մ. թ. ա. XIII դ. Մ. գաղութացրել են փյունիկեցիները: Մ. թ. ա. VI դ. դարձել է Կարթագենի տիրույթը: Մ. թ. ա. 218-ին Մ. անցել է Հռոմին: Մ. թ. 395—870-ին գտնվել է Բյուզանդիայի, 870—1091-ին՝ արաբների տիրապետության տակ: 1091-ին Մ. նվաճել են նորմանները և միացրել Սիկիլիային: 1530-ին Մ-ում հաստատվել է Հովհաննյանների ասպետական օրդենը (կոչվել է նաև Մ-ի օրդեն): XVI դ. բազմիցս ենթարկվել է թուրքերի հարձակումներին: 1775-ին տեղի է ունեցել բնակչության խոշոր ապստամբություն տեղի ասպետների ֆեոդ. շահագործման դեմ: 1798-ին Մ. զավթել են Նապոլեոն I-ի զորքերը, 1800-ին՝ Մեծ Բրիտանիան: Վերջինս էլ Մ. դարձրել է իր գաղութը: Մ-ի ռազմագիտական նշանակությունը մեծացել է Սուեզի ջրանցքի բացումից (1869) հետո: Մ. դարձել է Մեծ Բրիտանիայի ռազմածովային խոշոր բազան Միջերկրական ծովում: Առաջին համաշխարհային պատերազմից (1914—18) հետո Մ-ում ազատագրական շարժման թափը Մեծ Բրիտանիային հարկադրել է 1921-ին Մ-ին տալ ինքնավար գաղութի ստատուս: 1930-ին քաղ. սրված պայքարի պայմաններում անգլ. իշխանությունները վերացրել են ինքնավարությունը: Երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում (1939—45) Մ. ենթարկվել է իտալ. և գերմ. հարձակման: Ետպատերազմյան տարիներին ուժեղացել է ազգային-ազատագրական և բանվորական շարժումը: 1947-ի սահմանադրությամբ վերականգնվել է ներքին ինքնավարությունը: 1958-ին հակաանգլիական զանգվածային ելույթների պատճառով երկրում մտցվել է արտակարգ դրություն, 1959-ին վերացվել է 1947-ի սահմանադրությունը: 1962-ին Մեծ Բրիտանիան հարկադրված Մ-ին դարձյալ տվել է ներքին ինքնավարություն, իսկ 1964-ի սեպտ. 21-ին՝ անկախություն Բրիտ. համագործակցության շրջանակներում: 1964-ին Մ. դարձել է ՄԱԿ-ի անդամ: Միաժամանակ անկախ Մ-ին Մեծ Բրիտանիան պարտադրել է «փոխադարձ պաշտպանության մասին» համաձայնագիր՝ 10 տարի ժամկետով, որով իրավունք էր ստանում Մ-ում պահել զինված ուժեր, փաստորեն Մ. դառնում էր ՆԱՏՕ-ի ռազմ. բազա (դեռևս 1953-ին Մ-ում հաստատվել էր ՆԱՏՕ-ի՝ Եվրոպայի հվ. գոտու միացյալ ռազմածովային ուժերի շտաբը):

1962—71-ին իշխանության գլուխ էր կանգնած ազգայնական կուսակցության (հիմնադրվել է 1924-ին) կառավարությունը, որի վարած հետադիմական քաղաքա-




կանությունը հակասում էր Մ-ի ազգային շահերին և առաջացնում ժող. զանգվածների դժգոհությունը: 1971-ի համընդհանուր ընտրություններում հաղթեց լեյբորիստական կուսակցությունը (հիմնադրվել է 1920-ին), որի առաջնորդ Դ. Մինտոֆը կազմեց կառավարություն: Նոր կառավարությունը միջոցներ ձեռնարկեց Մ-ի ինքնիշխանությունն ամրապնդելու ուղղությամբ. երկրից դուրս բերվեց ՆԱՏO-ի՝ Եվրոպայի հվ. գոտու ռազմածովային ուժերի շտաբը, չեղյալ հայտարարվեց 1964-ի անգլո-մալթայական համաձայնագիրը, արգելվեց ամեր. 6-րդ նավատորմի նավերի մուտքը Վալետա նավահանգիստ են: Մ. վարում է չմիանալու, բոլոր երկրների հետ խաղաղ գոյակցության քաղաքականություն: 1974-ին Մ. հռչակվեց հանրապետություն, պետության ղեկավարը դարձավ պրեզիդենտը (մինչ այդ ղեկավար էր Մեծ Բրիտանիայի թագուհին): 1976-ից Մ-ի պրեզիդենտն է Ա. Բուտտիջիջը:

ՍՍՀՄ-ի և Մ-ի միջև դիվանագիտական հարաբերությունները հաստատվել են 1967-ին:

**Քաղաքական կուսակցությունները և արհմիությունները**: Մ-ի լեյբորիստական կուսակցություն, հիմնվել է 1920-ին: Ազգայնական կուսակցություն, հիմնվել է 1924-ին:

Մ-ի կոմունիստական կուսակցություն, ստեղծվել է 1969-ին:

Բանվորների համընդհանուր միություն, հիմնվել է 1943-ին, ունի 27,1 հզ. անդամ:

Մ-ի արհմիությունների կոնֆեդերացիա, ստեղծվել է 1958-ին, միավորում է 21 արհմիություն (12,5 հզ. անդամ), մտնում է ԱՀԿ-ի մեջ:

**Տնտեսա-աշխարհագրական ակնարկ**: Տնտեսապես թույլ զարգացած երկիր է, տիրապետում է արտասահմանյան, հատկապես անգլ. կապիտալը: Անկախության տարիներին Մ-ում ստեղծվել են արդ. նոր ճյուղեր, կապված մետաղամշակման, քիմ. արդյունաբերության հետ, ավելանում է շինանյութերի, էլեկտրաէներգիայի արտադրությունը, ընդլայնվել է սպասարկման ոլորտը (հատկապես հյուրանոցային): 1972-ին արտադրվել է 324 մլն *կվտ·ժ* էլեկտրաէներգիա: Արդյունաբերության առաջատար ճյուղերն են տեքստիլի ու սննդհամի արդյունաբերությունները: Կան կաշվի-կոշիկի, խեցեղենի, քիմ. ոչ մեծ ձեռնարկություններ: Խոշոր ձեռնարկություններից է նավանորոգարանը: Մալթա կղզում արդյունահանվում է շինաքար, կերակրի աղ: Մշակվում է տարածքի 40%-ը: Զբաղվում են հացահատիկային կուլտուրաների, բանջարեղենի մշակությամբ, պտղաբուծությամբ, այգեգործությամբ, ծաղկաբուծությամբ, անասնապահությամբ, առափնյա շրջաններում՝ ձկնորսությամբ:

Հիմնական ծովային նավահանգիստն ու օդանավակայանը Լուկան է, ավտոճանապարհների հանգույցը՝ Վալետան: Երկաթուղի չկա: Ավտոճանապարհները 1,2 հզ. *կմ* են: Արտահանում է տեքստիլ ապրանքներ, գինի, բանջարեղեն, մրգեր, ծաղիկներ, սերմեր, ներմուծում՝ սննդամթերքներ, քիմիկատներ, վառելիք, արդ. և տրանսպորտային սարքավորում: Արտաքին առևտրում առաջատար դեր ունեն Մեծ Բրիտանիան և Իտալիան: Առևտրական հաշվեկշռի դեֆիցիտը ծածկվում է ի հաշիվ տուրիզմից ստացվող եկամուտների և արտասահմանյան դրամական օգնության: 1976-ին Մ. են այցելել 336 հզ. արտասահմանյան տուրիստներ: Դրամական միավորը մալթայան ֆունտն է:

**Բժշկա-աշխարհագրական բնութագիրը**: 1977-ին ծնունդը կազմել է 1000 բնակչին՝ 18,0, մահացությունը՝ 8,9, մանկական մահացությունը 1000 ողջ ծնվածին՝ 14: Գերակշռում է ոչ վարակիչ ախտաբանությունը՝ աթերոսկլերոզ, չարորակ նորագոյացություններ, շաքարախտ, հիպերտոնիկ հիվանդություն են: Վարակիչ հիվանդություններից առավել տարածված են մանկական ինֆեկցիաները, որովայնային տիֆը: Հաճախակի են առնետային ռիկետսիոզի դեպքերը: 1971-ին պետ. հոսպիտալներում եղել է 3,4 հզ. մահճակալ (1000 բնակչին 10,4 մահճակալ): Արտահիվանդանոցային օգնություն են ցույց տվել հոսպիտալների 15 պոլիկլինիկական բաժանմունքները: 1975-ին աշխատել են 382 բժիշկ (850 բնակչին 1 բժիշկ), 44 ստոմատոլոգ, 300 դեղագործ, 1,5 հզ. միջին բուժաշխատող: Բժիշկներ, ստոմատոլոգներ և դեղագործներ պատրաստում է Մ-ի Թագավորական համալսարանը:

**Լուսավորությունը**: Պարտադիր կրթություն են ստանում 6—14 տարեկան երեխաները: Կրթական համակարգը նման է անգլիականին. 2-ամյա (փոքրիկների համար), 6-ամյա տարրական և 7-ամյա միջնակարգ (5—2 տարի) դպրոցներ: Միջնակարգ դպրոցները 3 տիպի են. քերականական, տեխ. և ժամանակակից: Մասնագիտական կրթություն են ստանում տարրական դպրոցի հիմքի վրա (3—5 տարի): Տարրական դպրոցի ուսուցիչներ են պատրաստում 5-ամյա միջնակարգ դպրոցները (2 տարի): Բարձրագույն կրթություն են տալիս Վալետայի Թագավորական համալսարանը (հիմն. 1952-ին, համալսարանի ստատուս է ստացել 1769-ին): Մայրաքաղաքն ունի նաև հումանիտար, բնական գիտությունների և տեխնոլոգիական կոլեջներ: Վալետայում է գտնվում Մ-ի թագավորական գրադարանը և Մ-ի Ազգային թանգարանը (1903):

**Մամուլը, ռադիոհաղորդումները, հեռուստատեսությունը**: Մալթայերեն առաջատար օրաթերթերից են «Իզ Զմեին» («Iz Zmein», 1966-ից), «Օրիզոնտ» («L' Orizzont»), «Իլ-Հադդիեմ» («Il-Haddiem», 1949-ից), անգլ.՝ «Թայմս օֆ Մալթա»



Վալետա

(«Times of Malta», 1935-ից), «Բուլետին» («Bulletin», 1944-ից), «Մալթա Նյուս» («Malta News», 1964-ից)։ Մալթայերեն առաջատար շաբաթաթերթերից է «Տորկա» («Il-Torka», 1944-ից), անգլ. են «Սանդի թայմս օֆ Մալթա»-ն («The Sunday Times of Malta», 1922-ից), «Մալթիզ օբսերվերը»-ը («The Maltese Observer», 1964-ից)։ Ռադիոհաղորդումները տրվում են մալթայերեն և անգլ.։ Հեռուստատեսությունը գործում է 1962-ից։

**Ճարտարապետությունը և կերպարվեստը**։ Մ. և Գոցո կղզիներում պահպանվել են կետանախշ և գալարանախշ հարթաքանդակներով, կիկլոպյան շարվածքի պատերով շրջափակված նոր քարի դարի մեգալիթյան պաշտամունքային հազվագյուտ կառույցներ, սրբավայրերի տարածքում՝ նախշազարդ խեցեղեն, քարե և թրծակավե արձանիկներ։ Մ-ի անտիկ, բյուզանդա-արաբ. ժամանակաշրջանների արվեստը գավառային բնույթի է։ Ուշ միջնադարյան ճարտ. կրել է սիցիլիական-նորմանական ազդեցություններ։ Ուշ Վերածննդի շրջանում Մալթայական օրդենին ծառայող իտալացի վարպետները ստեղծել են ամրոցային և քաղաքացիական շինարվեստի նորարարական նմուշներ (Վալետտայի կանոնավոր կառուցապատումը)։ XVII դ. Մ-ում աշխատել են իտալացի գեղանկարիչներ (Կարավաջո և ուրիշներ)։ Հետզհետե սկսել են մեծ դեր խաղալ տեղացի վարպետները (XVI դ.՝ ճարտ. Կասսարը, XVII դ.՝ բարոկկոյի ներկայացուցիչներ Գաֆա եղբայրները՝ ճարտ. Լորենցոն և քանդակագործ Մելքիորը, XVIII—XIX դդ.՝ ճարտ-կլասիցիստներ Ս. Իտտարը և Դ. Գրոնիե դե Վասսոն)։

*Գրկ.* Blouet B., The Story of Malta, L., 1967; Dobie E., Malta's Road to Independence, Norman, 1967; Zammit T., Prehistoric Malta..., L., 1930; Ceschi C., Architettura dei tempi limegalitici di Malta, Roma, 1939; Duncan A., Malta: An Archaeological Survey, L., 1973.

**ՄԱԼԹԱԶ**, *մալթոզի* α—գլյուկոզիդային կապի ճեղքումը կատալիզող ֆերմենտ։ Մտնում է մարդու և կաթնասուն կենդանիների թքի, ենթաստամոքսային գեղձի, աղիքների հյութի բաղադրության, ինչպես նաև արյան, լյարդի, կմախքային մկանների մեջ։ Հանդիպում է նաև բուսական հյուսվածքներում։ Մ-ով առավել հարուստ են խմորասնկերը։ Մ. ունի կարևոր նշանակություն ածխաջրերի ճեղքման, յուրացման պրոցեսներում։

**ՄԱԼԹՈԶ** (< անգլ. malt — ածիկ), ածիկաշաքար, $C_{12}H_{22}O_{11}$, բնական երկշաքար, որի մոլեկուլը կազմված է խաղողաշաքարի 2 մոլեկուլի մնացորդներից։ Պարունակվում է բազմաթիվ բույսերի ծլած սերմերում (գարի, տարեկան), տերևներում (ճակնդեղ), որոշ բույսերի փոշեհատիկներում ու նեկտարում։ Ունի քաղցր համ, հեշտությամբ լուծվում է ջրում։ Մ-ի կենսասինթեզը հայտնի է միայն մի քանի բակտերիաների մոտ։ Կենդանիների և բույսերի օրգանիզմներում Մ. առաջանում է օսլայի և գլիկոգենի ֆերմենտային ճեղքումից։ Մ-ի ճեղքումն իրականացվում է *մալթազ* ֆերմենտի միջոցով։ Մ. օգտագործվում է քաղցրավենիքի արտադրության և մանրէաբանության մեջ։

**ՄԱԼԹՈՒՍ** Թոմաս Ռոբերտ (1766—1834), անգլիացի տնտեսագետ, քահանա։ Ավարտել է Քեմբրիջի համալսարանի Ջեզուս-կոլեջը (1788), ստացել աստվածաբանի գիտ. աստիճան (1793)։ 1805—34-ին Արևելա-Հնդկական ընկերության կոլեջի ժամանակակից պատմության և քաղաքատնտեսության ամբիոնի պրոֆեսոր։ Մ. բուրժուականացած հողատեր-ազնվականության գաղափարախոսն էր, գռեհիկ քաղաքատնտեսության հիմնադիրներից։ «Քաղաքատնտեսության սկզբունքներ» (1820) աշխատության մեջ նա հակադրվել է Դ. *Ռիկարդոյի* արժեքի աշխատանքային տեսությանը և պնդել, որ արժեքը որոշվում է արտադրության ծախսերով, իսկ շահույթի աղբյուրը ոչ թե աշխատանքն է, այլ կապիտալը։ Արտադրության զարգացման համար կարևորել է շահույթի իրացման պրոբլեմը։ Ըստ Մ-ի, եթե հասարակությունը կազմված լիներ միայն բանվորներից ու կապիտալիստներից, ապա շահույթն իրացվել չէր կարող, քանի որ բանվորները ձեռք են բերում անձնական սպառման առարկաների մի մասը, իսկ կապիտալիստների կողմից շահույթի իրացումը կնշանակի հարստության փոխադրում մի գրպանից մյուսը։ Այս պրոբլեմը, իբր, լուծում են անարտադրողական դասերը (հողատերերը, հոգևորականներ, զինվորականներ), որոնք իրենց եկամուտներով իրացնում են շահույթը և ապահովում վերարտադրության բնականոն ընթացքը։ Մ. առավել հայտնի է «Ազգաբնակչության տեսության փորձ» (1798) աշխատությամբ, որտեղ աշխատավորների թշվառության պատճառը համարել է «մարդկանց բացարձակ ավելացումը», «ազգաբնակչության բնական օրենքները» (տես *Մալթուսականություն*)։

**ՄԱԼԹՈՒՍԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, *ազգաբնակչության* մասին բուրժուական տեսություն, ըստ որի աշխատավորների դրությունը որոշվում է ոչ թե կապիտալիզմի սոցիալական պայմաններով, այլ բնության «մշտնջենական» օրենքներով (իբր՝ գոյամիջոցների աճը ետ է մնում ազգաբնակչության աճից)։ Կոչվել է հեղինակի՝ Թ. Ռ. *Մալթուսի* անունով։ Նշելով բնակչության վերարտադրության մեջ կենսաբանական գործոնների որոշիչ նշանակությունը, Մալթուսը պնդում էր, որ բնակչությունն ունի երկրաչափական պրոգրեսիայով բազմանալու միտում, իսկ գոյամիջոցներն ավելանում են միայն թվաբանական պրոգրեսիայով, որի հետևանքով բնակչության մի մասը մնում է անգործ ու քաղցած։ Այդ «ավելորդ» բնակչությունը, իբր, խախտում է հասարակության զարգացման բնականոն ընթացքը և, ըստ Մալթուսի, անհրաժեշտություն է դառնում այն վերացնել սովի, պատերազմների, համաճարակների միջոցով։ Բացահայտելով Մ-յան հակագիտական էությունը, մարքսիզմ-լենինիզմի դասականները ցույց տվեցին, որ չկան և չեն կարող լինել «ազգաբնակչության բնական մշտնջենական օրենքներ», ինչպես նաև «*հողի բերրիության նվազման օրենք*» (որը վկայակոչում էր Մալթուսը), իսկ բնակչության վերարտադրության օրինաչափությունները պայմանավորված են տվյալ հասարակության սոցիալ-տնտ. առանձնահատկություններով։ Բացարձակ գերբնակչություն լինել չի կարող. կապիտալիստական հասարակարգում գոյություն ունի *հարաբերական գերբնակչություն* (գործազրկություն), որը կապիտալիստական մեքենայական արտադրության հետևանք է, աշխատանքի ու կապիտալի միջև հակասության արտահայտություն։

Ժամանակակից Մ-յան՝ նեոմալթուսականության ներկայացուցիչներ Ն. Չեմբեռլենը, Ու. Ֆոգտը (ԱՄՆ), Օ. Հեքսլին, Դ. Դուտոնը (Անգլիա) և ուրիշներ ձգտում են Մալթուսի դրույթները կիրառել ներկա պայմաններում։ Նեոմալթուսականությունն այժմ սերտորեն շաղկապվում է «լիարժեք» և «անլիարժեք» ժողովուրդների «արժեքավոր» և «անարժեք» մարդկանց, «ուժեղների» կենսունակության մասին ռասիստական տեսությունների հետ և դարձել է նեոգաղութատիրության տեսական զենքը։ Նեոմալթուսականները պնդում են, որ տնտեսապես թույլ երկրների ինքնուրույն զարգացումը չի բարելավի մարդկանց նյութական դրությունը, որովհետև բնակչության աճը կլանում է բոլոր կուտակումները, և զարգացման ռեզերվներ չեն մնում։ Հետևաբար զարգացող երկրների ինդուստրացումն անհնար է, և նրանք պետք է շարունակեն մնալ որպես կապիտալիստական աշխարհի ագրարային-հումքային կցորդներ, իսկ նրանց տնտ. զարգացմանը նպաստել, իբր, կարելի է միայն բնակչության աճը կարգավորելով։ Գերբնակչության գլխավոր պատճառ են համարում ոչ միայն բնակչության աճի ու գոյամիջոցների արտադրության, այլև բնակչության թվի ու արտադրության առկա միջոցների՝ հողի և կապիտալի անհամապատասխանությունը։ Այստեղից էլ՝ պահանջում են զարգացող երկրներում իրականացնել ծնելիության կրճատման արմատական միջոցառումներ։ Իրականում բնակչության աճի բարձր տեմպերն այդ երկրներում պայմանավորված են նրանց սոցիալ-տնտ. զարգացման մակարդակով, և բժշկության առաջընթացի շնորհիվ՝ մահացության նվազմամբ։

Սոցիալիստական ու ոչ կապիտալիստական ուղիով զարգացող երկրների փորձը հերքում է նեոմալթուսականության կեղծ գիտական և մարդատյաց տեսությունները։ Դեմոգրաֆիական պրոցեսները պետք է կարգավորել ոչ թե նեոմալթուսականության մեթոդներով, այլ մարդկանց կյանքի ու աշխատանքի պայմանների արմատական բարելավմանը նպաստող սոցիալ-տնտ. ծավալուն, առաջադիմական վերափոխումների միջոցով։ Մ-յան ու նեոմալթուսականության դրույթները բուրժ. ռեակցիոն գաղափարախոսության դրսևորումներ են, այդ պատճառով մարքսիզմ-լենինիզմի դասականները բազմիցս շեշտել են Մ-յան հին ու նոր ձևերի դեմ վճռական պայքարի անհրաժեշտությունը։

*Գրկ.* Մարքս Կ., Կապիտալ, հ. 1, գլուխ 23, Ե., 1954։ Լենին Վ. Ի., Բանվոր դասակարգը և նեոմալթուսականությունը, Երկ., հ. 19։ Марксистско-ленинская теория народонаселения, М., 1974.

*Ն. Թովմասյան*




**ՄԱԼԻ**, Մալիի Հանրապետություն (République du Mali), պետություն Արևմտյան Աֆրիկայում: Տարածությունը 1204 հզ. *կմ²* է, բնակչությունը՝ 6,3 մլն (1976): Մայրաքաղաքը՝ Բամակո: Վարչականորեն բաժանվում է 6 շրջանի:

**Պետական կարգը**: Մ. հանրապետություն է: Պետության և կառավարության գլուխը, ինչպես և պաշտպանության մինիստրը պրեզիդենտն է, օրենսդրական մարմինը՝ ազգային ժողովը:

**Բնությունը**: Ռելիեֆն առավելապես հարթավայրային է (200—500 *մ* միջին բարձրությամբ): Հվ-արմ-ում Ֆուտա Ջալոն զանգվածի լեռնաճյուղերն են, հս-արլ-ում՝ Իֆորաս սարավանդը: Առավելագույն բարձրությունը 1155 *մ* է (Հոմբորի լեռ): Մ-ի տարածքը գրեթե ամբողջությամբ գտնվում է Աֆրիկա—Արաբական պլատֆորմի սահմաններում: Կլիման արևադարձային է, ծայր հվ-ում՝ մերձհասարակածային: Միջին տարեկան ջերմաստիճանները 22—29°C են: Տարեկան տեղումները հս-ում մինչև 150 *մմ* են, հվ-ում՝ 600—1500 *մմ*: Գլխավոր գետերն են Նիգերն ու Սենեգալը, տարածված են վադիները: Տարածքի 1/2-ը (հս-ում) զբաղվում է Սահարան: Հվ-ում, կարմրագորշ և կարմիր լատերիտային հողերի վրա, տարածված են սավաննաները, գետահովիտներում՝ սրահային անտառները: Բնորոշ կենդանիներն են այծքաղը, փիղը, ընձուղտը, վագրակատուն, վայրի խոզը, առյուծը, փիղը են: Բազմազան է թռչնաշխարհը: Գետերն ու լճերը հարուստ են ձկներով: Շատ են միջատները:

**Բնակչությունը**: 90%-ը նեգրոիդ ռասային պատկանող ժողովուրդներ են (բամբարներ, սենուֆոներ, ֆուլբեներ, սոնգհայներ և այլք): Բնակվում են նաև տուարեգներ, արաբներ: Բնակչության մոտ 70%-ը մահմեդականներ են, մնացածը պահպանում են տեղական հավատալիքները: Պաշտոնական լեզուն ֆրանսերենն է, տոմարը՝ գրիգորյանը: Խոշոր քաղաքներն են Բամակոն, Մոպտին, Սեգուն, Կաեսը:

**Պատմական ակնարկ**: Մ-ի հին պատմությունը քիչ է ուսումնասիրված: Միջին դարերում Մ-ի տարածքում առաջացել են Արևմտյան Աֆրիկայի առաջին պետությունները՝ Մալի, Գանա, Սոնգհայ: VIII դ. տարածվել է մահմեդականությունը: XIX դ. 2-րդ կեսից Ֆրանսիան սկսել է գաղութացնել Արևմտյան Աֆրիկան: 1894-ին Նիգեր և Սենեգալ գետերի վերին և միջին հոսանքներում տեղադրված շրջանները միավորվել են Ֆրանսիական Սուդան գաղութի մեջ, որը 1895-ին մտել է Ֆրանս. Արևմտյան Աֆրիկայի կազմի մեջ: Բնիկների ազատագրական պայքարը գաղութարարների դեմ ուժեղացել է երկրորդ համաշխարհային պատերազմից (1939—45) հետո: 1946-ին Բամակոյում կայացավ Աֆրիկյան դեմոկրատական միավորում (ԱԴՄ) կուսակցության սահմանադիր կոնգրեսը, 1946-ի վերջին Ֆրանս. Սուդանում ստեղծվեց ԱԴՄ-ի սեկցիան՝ Սուդանի միություն (ՍՄ) կուսակցությունը, որը գլխավորեց ազգային ազատագրական շարժումը: 1958-ին Ֆրանս. Սուդանը Սուդանի Հանրապետություն անունով ստացավ Ֆրանս. համագործակցության անդամ երկրի ստատուս: 1959-ին Սուդանի Հանրապետությունը և Սենեգալի Հանրապետությունը միավորվեցին Մալիի Ֆեդերացիայի մեջ, որը 1960-ի հունիսին անկախություն ստացավ Ֆրանս. համագործակցության շրջանակներում: Ֆեդերացիայի ղեկավարների շրջանում մի շարք տարաձայնությունների պատճառով 1960-ի օգոստոսին Սենեգալի Հանրապետությունը դուրս եկավ Ֆեդերացիայից: 1960-ի սեպտեմբերին Սուդանի Հանրապետությունը հռչակվեց ինքնիշխան, անկախ պետություն՝ Մալիի Հանրապետություն անունով (միաժամանակ ընդունվեց սահմանադրություն), և որոշում ընդունվեց Ֆրանս. համագործակցությունից դուրս գալու մասին: 1960-ին Մ. դարձավ ՄԱԿ-ի անդամ: Մ-ի կառավարությունը վարում էր դրական չեզոքության, ոչ դաշինքներին չմասնակցելու քաղաքականություն, պայքարում գաղութատիրության մնացուկների և նեոգաղութատիրության դեմ՝ հանուն զինաթափման: 1960-ին դիվանագիտական հարաբերություններ հաստատվեցին ՍՍՀՄ-ի և Մ-ի միջև, 1961-ին կնքվեցին համաձայնագրեր տնտ. և առևտրական համագործակցության, մշակութային կապերի վերաբերյալ: 1961-ին Մ-ի կառավարությունը կարողացավ Մ-ից դուրս բերել տալ ֆրանս. զորքերը: ՍՄ կուսակցությունը տնտ. զարգացման հիմնական խնդիր համարեց «սոցիալիստական պլանավորման շրջանակներում տնտ. նոր կառուցվածքի ստեղծումը», իսկ ՍՄ համագումարը կուսակցության գաղափարական հիմք հռչակեց գիտական սոցիալիզմը: Նախագծված լայն վերափոխումների իրագործումը հանդիպեց ձևավորվող ազգ. բուրժուազիայի օպոզիցիային, չկային վերափոխումներն իրագործելու արտաքին և ներքին պայմաններ: Այդ իրավիճակում մի շարք քաղ. և պետ. գործիչներ Մոդիբո *Քեյտայի* գլխավորությամբ 1967-ին կազմեցին Հեղափոխության պաշտպանության ազգային կոմիտե (ՀՊԱԿ), որն իր ձեռքը վերցրեց երկրի կառավարումը: ՍՄ-ի բարձրագույն մարմինները և Օրենսդրական ասամբլեան արձակվեցին: ՀՊԱԿ, հենվելով արհմիությունների և երիտասարդական կազմակերպության վրա, միջոցներ ձեռնարկեց տնտ. դրության բարելավման համար, որոնք, սակայն, ուշացած էին: 1968-ին կատարվեց զինվորական հեղաշրջում, ստեղծվեց Ազգ. ազատագրության զինվորական կոմիտե (ԱԱԶԿ), որին մինչև 1979-ի հունիսի 28-ը պատկանում էր պետ. իշխանությունը: 1979-ի հունիսին ստեղծվեց մալիական ժողովրդի դեմոկրատա-



կան միություն կուսակցությունը, որի նախագահ Մ. Տրաորեն (նախկինում՝ ԱԱԶԿ-ի նախագահ) դարձավ Մ-ի պրեզիդենտ: Երկրում ժամանակավորապես դադարեցվել է սահմանադրության գործադրությունը: Մ-ի կառավարությունը աջակցում է ազգային-ազատագրական շարժումներին, պայքարում հանուն միջազգային լարվածության թուլացման և խաղաղության պահպանման, հանդես գալիս ռասիզմի և նեոգաղութատիրության դեմ:

**Քաղաքական կուսակցությունները և արհմիությունները**: Մալիական ժողովրդի դեմոկրատական միություն, միակ կուսակցությունը երկրում, ստեղծվել է 1979-ին:

Մ-ի աշխատավորների ազգային միություն, հիմնվել է 1974-ին:

**Տնտեսա-աշխարհագրական ակնարկ**: Մ. ագրարային երկիր է: Անկախությունից հետո զարգանում է պետ. սեկտորը: Ժող. տնտեսության զարգացմանն օգնում են ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրները:

Գյուղատնտեսության մեջ զբաղված է տնտեսապես ակտիվ բնակչության մոտ 4/5-ը: Տիրապետում է համայնական հողատիրությունը: Մշակում են կորեկ, սորգո, բրինձ, եգիպտացորեն, բատատ, մանիոկա, գետնանուշ, բամբակ ևն: Զբաղվում են նաև բանջարաբուծությամբ, այգեգործությամբ, ձկնորսությամբ: Մ. Արևմտյան Աֆրիկայի խոշորագույն անասնապահական երկրներից է: 1978-ին կար 5 մլն խոշոր, 11,7 մլն մանր եղջերավոր անասուն: Արդյունահանող արդյունաբերությունը սահմանափակվում է կրաքարի և մարմարի արդյունահանությամբ: Տնայնագործական եղանակով արդյունահանում են նաև աղ, ոսկի: Տարեկան արտադրվում է 75—85 մլն *կվտ·ժ* էլեկտրաէներգիա: Մշակող արդյունաբերությունը ներկայացված է գյուղատնտ. հումքի նախնական մշակման ձեռնարկություններով (բամբակազտիչ, պահածոների, շաքարի, ծխախոտի ևն): Կան տեքստիլ կոմբինատներ, մետաղամշակման, գյուղատնտ. սարքավորման, տրանզիստորների հավաքման և այլ գործարաններ: Զարգացած են արհեստները:

1978-ին երկաթուղիների երկարությունը 645 *կմ* էր, ավտոճանապարհներինը՝ 13 հզ. *կմ*: Տրանսպորտային կարևոր ուղի է Նիգերը: Կան օդանավակայաններ (Բամակոյում՝ միջազգային): Արտահանում է բամբակ, գետնանուշ, անասուն, ձուկ, աղ, կաշի, ներմուծում՝ մեքենաներ և սարքավորում, քիմ. ապրանքներ, պարեն: Առևտրական գլխավոր գործընկերներն են Ֆրանսիան, ԳՖՀ, Կանադան, Փղոսկրի



Գյուղ երկրի հարավ-արևմուտքում

Ափը, Սենեգալը, ՉԺՀ: Դրամական միավորը մալիական ֆրանկն է: 1000 մալիական ֆրանկը = 1,33 ռ. (1981):

**Բժշկա-աշխարհագրական բնութագիրը**: 1970—75-ին ծնունդը կազմել է 1000 բնակչին՝ 50,1, մահացությունը՝ 26,6, մանկական մահացությունը 1000 ողջ ծնվածին՝ 120,0: Գերակշռում են վարակիչ հիվանդությունները: Մահացության հիմնական պատճառներն են մալարիան, ստամոքսա-աղիքային համակարգի և ճիճվային հիվանդությունները: Գյուղական շրջաններում բնակչության 70%-ը տառապում է բորով և տրախոմայով: 1974-ին գործել է 97 հիվանդանոցային հիմնարկ՝ 4,1 հզ. մահճակալով (1000 բնակչին 0,7 մահճակալ): Արտահիվանդանոցային օգնություն են ցույց տվել (1974) 10 պոլիկլինիկա, գյուղական 294 ամբուլատորիա ևն: 1974-ին աշխատել են 130 բժիշկ (50 հզ. բնակչին 1 բժիշկ), 9 ատամնաբույժ, 15 դեղագործ և ավելի քան 2,2 հզ. միջին բուժաշխատող: Բժիշկները պատրաստվում են արտասահմանում, միջին բուժանձնակազմը՝ բժշկ. դպրոցներում: 1965-ին ՍՍՀՄ-ի օգնությամբ Բամակոյում կառուցվել է բուժքույրերի և մանկաբարձների պատրաստման դպրոց:

**Լուսավորությունը և գիտական հիմնարկները**: Մ-ի տարածքում առաջին դպրոցները (արաբ.) հիմնվել են XIV դ.: Միջնադարյան արաբ. մշակույթի կարևոր կենտրոններ Տոմբուկտու և Ջեննե քաղաքներում XV—XVIII դդ. գործել են մահմեդական համալսարաններ: Աշխարհիկ առաջին դպրոցները երևան են եկել XIX դ. 2-րդ կեսին: Անկախություն ձեռք բերելուց հետո Մ-ում անց է կացվել դպրոցական ռեֆորմ: 1967-ին կառավարությունն այբուբեններ է հաստատել երկրի չորս հիմնական լեզուների [բամբարա, ֆուլբե, սոնգահ, տամաշեկ (տուարեգերեն)] համար: Չրի և պարտադիր հիմնական դպրոցը (ընդունվում են 6—10 տարեկանները) 9-ամյա է և ունի երկու (5—4 տարի) աստիճան: Միջնակարգ դպրոցը 3-ամյա է, վճարովի, ավարտողը բուհ ընդունվելու իրավունք է ստանում: Պրոֆտեխնիկական կրթության համակարգը կառուցված է երկու մակարդակով՝ բանվորների 2—3-ամյա պատրաստում հիմնական դպրոցի I աստիճանի հիմքի վրա և 2—3-ամյա միջնակարգ տեխնիկական կրթություն հիմնական դպրոցի II աստիճանի հիմքի վրա: ՍՍՀՄ-ի օժանդակությամբ Մ-ում ստեղծվել են Մանկավարժական, Ազգ. վարչական բարձրագույն դպրոցներ (Բամակոյում), Գյուղատնտ., Ազգ. ինժեներական ինստ-ները (Կատիբուգուում): Ունի նաև Արվեստների ազգային ինստ. ևն: Գործում են Ազգ. գրադարանը և Ազգ. թանգարանը (Բամակո), Արաբ. գրականության կենտրոնը (Տոմբուկտու):



Ցեմենտի գործարան Դիամ քաղաքում

Գիտական հիմնարկներից են՝ Հումանիտար գիտությունների ինստ. (հիմնադրվել է 1913-ին), Անասնաբուժության հետազոտական կենտրոնը (1927), Գյուղատնտ. ինստ., Մ-ի ԳՀԻ, Բրնձագործության հետազոտական կենտրոնը, ինչպես նաև ֆրանս. մի շարք ինստ-ների (Բամբակի հետազոտման, Թելատու կուլտուրաների, Պտղաբուծության ևն) բաժանմունքներ:

**Մամուլը, ռադիոհաղորդումները**: Լույս են տեսնում «Էսսոր» («L' Essor», 1948-ից, ֆրանս.) օրաթերթը, «Կիբարու» (1972-ից, բամբարա լեզվով) ամսաթերթը, «Ժուռնալ օֆիսիել դը լա Ռեպյուբլիկ դյու Մալի» («Journal officiel de la République du Mali», ֆրանս.) կառավարական պաշտոնաթերթը: 1957-ին հիմնվել է Մ-ի ռադիոծառայությունը (հաղորդումները տրըվում են ֆրանս., ֆուլբե, բամբարա, տամաշեկ և այլ լեզուներով):

**Գրականությունը**: Մինչև XX դ. 60-ական թթ. վերջը Մ-ի ժողովուրդները գիր չեն ունեցել: Ժամանակակից գրականությունն ստեղծվում է ֆրանսերենով: Հիմնադիրը կարող է համարվել պատմաբան Ուանը («Ֆադիմաթան, անապատի իշխանուհին», 1956, «Խեցեմանյակ», 1957 ևն, պատմվածքներ): 1950-ական թթ. առավել խոշոր գրող քաղ. և արհմիութենական գործիչ, բանաստեղծ և արձակագիր Ֆիլի-Դաբո Սիսոկոն է (1900—1963): Ինչպես Ուանը, այնպես էլ Սիսոկոն, հանդես են եկել Աֆրիկայի ու Ֆրանսիայի սերտ դաշինքի օգտին, դրա մեջ տեսնելով Աֆրիկայի հետամնացությունը հաղթահարելու անհրաժեշտ պայմանը:

Այլ ուղղության է պատկանում վիպասան և դրամատուրգ Սեյդու Բադիանը (ծն. 1928): «Չակիի մահը» (1962) դրամայում նա պատմական սյուժեն օգտագործել է ժամանակակից Աֆրիկայի կենսական խնդիրները լուսաբանելու համար: Հակագաղութային պայքարի պաթոսով է ներթափանցված բանաստեղծ Մամադու Գոլոգոյի ստեղծագործությունը: 1960-ական թթ. կեսերին ասպարեզ մտան մի խումբ երիտասարդ բանաստեղծներ (Գաուսու Դիավարա, Սիրիման Սիսոկո և ուրիշներ): 1968-ին «Բռնության պարտքը» վեպով հանդես եկավ Ցամբո Ուոլոգեմը (ծն. 1940): Նույն թվականին նա հրատարակեց «Նամակ նեգրական Ֆրանսիային» երգիծական էսսեների գիրքը, որտեղ դրըվում է ռասիզմն արմատախիլ անելու հարցը: 60—70-ական թթ. երևան եկան գրքեր, որոնք Մ-ի գրականության համար ավանդական ֆոլկլորային մշակումներ են:

**Ճարտարապետությունը և կերպարվեստը**: Մ-ում պահպանվել են նոր քարի դարի հուշարձաններ (ժայռապատկերներ, որս, պատերազմ, պար պատկերող անձավային նկարներ, մենհիրներ, կավե և քարե արձանիկներ): Հնուց հիմնական բնակարանը կավի և հարդի խառնուրդից (բանկո) շինված խրճիթն է, որը գյուղերում բոլորաձև է, ձողային հիմնակմախքով, առանց պատուհանների, հարդե կոնաձև ծածկով: Քաղաքներում տները հիմնականում ուղղանկյուն են, կավե, թիթեղյա կամ շիֆերի ծածկով: Լեռնային շրջաններում դոգոն ժողովրդի գյուղերն ամրացված են, խրճիթներն ունեն դիտաշտարակների տեսքով վերնակառույցներ: Հյուսիսի քոչվորները (ֆուլբեներ, տուարեգներ, արաբներ) ապրում են վրաններում և խսիրե ու կաշվե բոլորշի խրճիթներում: XI—



Ծնդաբերի փայտե ծխախոտատուփ (սենուֆո ժողովուրդ)

XVI դդ. Մ-ի տարածքում ստեղծված պետություններում զարգացել է քաղաքաշինությունը: Նիանի, Գաո, Տամբուկտու, Ջեննե և այլ քաղաքներ ամրացվել են պարիսպներով, ունեցել են փողոցների անկանոն ցանց, կառուցապատվել հասարակական շենքերով, մզկիթներով, տեղական «սուդանյան ոճի» բնակելի տներով: Գաղութարարների օրոք կառուցվել են նաև արևմտաեվրոպական և էկլեկտիկայի ոգով շենքեր, 1950-ական թվականներից՝ արդի շինություններ (նոր շինա-

Մզկիթ Ջեննեում (XIII դ.)





Փայտե դիմակ (դոգոն ժողովուրդ)

նյութերով): Շինարարության ասպարեզում մեծ օգնություն են ցույց տալիս սոցիալիստական երկրները՝ ՍՍՀՄ, Բուլղարիան ևն (Բամակոյի սպորտային համալիրն ու մի շարք ուսումնական հաստատություններ, 1962—66, սովետական ճարտ. Լ. Ն. Աֆանասև և ուրիշներ): Գեղարվեստական արհեստներից հնուց զարգացած են փայտի քանդակազարդումը (աթոռներ, դռներ, ծիսային դիմակներ, մարդկանց և կենդանիների արձանիկներ), պղնձաձուլումը, կոկորդիլոսի և օձի կաշվից իրերի, երկրաչափական զարդանախշերով գործվածքների պատրաստումը: Անկախության հռչակումից հետո կազմավորվում է պրոֆեսիոնալ արվեստը:

**Թատրոնը**: Մ-ի ժողովուրդները պահպանել են թատերականացված ներկայացումների ավանդույթները (դիմակներով պար, երգ ևն): XX դ. կեսին այդ ներկայացումները կորցրել են ծիսական նշանակությունը: Աֆրիկյան հին գյուղի կենցաղն ու բարքերն արտահայտող կոտեբա ժող. թատրոնի հնագույն ձևերն առավել երկարատև պահպանել է բամբարա ժողովուրդը: Ժամանակակից սիրողական թատրոնը սկսել է զարգանալ 1950-ական թթ.: Անկախություն ձեռք բերելուց (1960) հետո այն մասսայական բնույթ է ստացել և անցել պետության տնօրինությանը: 1962-ից անց են կացվում սիրողական արվեստի ամենամյա (1970-ից՝ 2 տարին մեկ) ստուգատես-մրցումներ: Մ-ի ավանդական արվեստը արտասահմանում պրոպագանդելու համար ստեղծվել է Ազգ. ֆոլկլորային թատերախումբ (1961-ին և 1970-ին ելույթներ է ունեցել ՍՍՀՄ-ում): 1963-ին Բամակոյում ստեղծվել է Արվեստների ազգ. ինստ.՝ դրամայի բաժանմունքով, որի սաներից 1970-ին կազմակերպվել է Ազգային թատրոնի թատերախումբը:

*Գրկ.* Радченко Г. Ф., Республика Мали, М., 1969; Кондратьев Г. С., Путь Мали к независимости, М., 1970; Поэты Мали. Сборник, пер. с франц., М., 1965; Сказки народов Мали, М., 1969; L'art nègre, P., 1951.

**ՄԱԼԻԲՐԱՆ** (Malibran, օրիորդական ազգանունը՝ Գ ա ր ս ի ա) Մարիա Ֆելիսիտա (1808—1836), ֆրանսիական երգչուհի (կոլորատուրային մեցցո-սոպրանո), ազգությամբ իսպանուհի: Իսպանացի երգիչ և կոմպոզիտոր Մ. Գարսիա-ավագի դուստրն ու աշակերտուհին, երգչուհի Պ. Վիարդո-Գարսիայի քույրը, ջութակահար Շ. Բերիոյի կինը: 1816-ից երգեցողություն է ուսանել հոր մոտ: Առաջին ելույթը կայացել է 1825-ին Լոնդոնում: Երգել է Ֆրանսիայի, Անգլիայի, Իտալիայի խոշորագույն օպերային բեմերում: Լավագույն դերերգերից են՝ Նորմա, Ամինա (Բելլինիի «Նորմա», «Սոմնամբուլա»), Լեոնորա (Բեթհովենի «Ֆիդելիո»): Մ-ի տաղանդը բարձր են գնահատել Ջ. Վերդին, Ֆ. Լիստը: Մ. մի շարք ստեղծագործությունների (նոկտյուրններ, ռոմանսներ) հեղինակ է: Մ-ին է նվիրված Բեննետտի «Մարիա Մալիբրան» օպերան (1935, Նյու Յորք):

**ՄԱԼԻՆՈՎՍԿԻ** Ռոդիոն Յակովլևիչ (1898, Օդեսա —1967, Մոսկվա), սովետական զորահրամանատար, Սովետական Միության մարշալ (1944), Սովետական Միության կրկնակի հերոս (1945, 1958), Հարավսլավիայի ժող. հերոս (1964): ՍՄԿԿ անդամ 1926-ից: Զինծառայությունը սկսել է 1914-ից: 1919-ից ծառայել է կարմիր բանակում (մասնակցել է սպիտակգվարդիականների դեմ մարտերին): Ավարտել է Մ. Ֆրունզեի անվ. ռազմ. ակադեմիան (1930): 1937—38-ին կամավոր մասնակցել է Իսպանիայի քաղաքացիական պատերազմին: 1941—45-ի Հայրենական մեծ պատերազմի ժամանակ եղել է կորպուսի (48-րդ հրաձգային), բանակների (6-րդ, 66-րդ, 2-րդ գվարդիական), ռազմաճակատների [Հարավային, Հարավ-Արևմտյան (վերանվանված 3-րդ Ուկրաինական), 2-րդ Ուկրաինական] հրամանատար:



Ռ. Յա. Մալինովսկի

Մասնակցել է Ստալինգրադի ճակատամարտին, Դոնբասի, Աջափնյա Ուկրաինայի մարտերին, Յասսի—Քիշնևի օպերացիային, Ռումինիայի, Հունգարիայի, Ավստրիայի և Չեխոսլովակիայի ազատագրմանը: 1945-ի հուլիսից՝ Անդրբայկալյան ռազմաճակատի զորահրամանատար: Ետպատերազմյան տարիներին եղել է Անդրբայկալ—Ամուրյան ռազմ. օկրուգի հրամանատար (1945—47), Հեռավոր Արևելքի զորքերի գլխ. հրամանատար (1947—1953), Հեռավոր Արևելյան ռազմ. օկրուգի հրամանատար (1953—56), պաշտպանության մինիստրի 1-ին տեղակալ և Ցամաքային զորքերի գլխավոր հրամանատար (1956—57), ՍՍՀՄ պաշտպանության մինիստր (1957—67): 1952-ից ՍՄԿԿ ԿԿ-ի անդամ: ՍՍՀՄ II—VII գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Պարգևատրվել է Լենինի 5, Հաղթանակի, Կարմիր դրոշի 3, Սուվորովի I աստիճանի 2, Կուտուզովի I աստիճանի, 16 արտասահմանյան շքանշաններով, ինչպես նաև մեդալներով: Գրել է «Ռուսաստանի զինվորները» (1969) գիրքը: Աճյունն ամփոփված է Կրեմլի պատի մեջ: Մ-ի անունով է կոչ-

վում Ջրահատանկային զորքերի ռազմ. ակադեմիան:

**ՄԱԼԻՇԵՎ** Յուրի Վասիլևիչ (ծն. 1941), ՍՍՀՄ տիեզերագնաց-օդաչու, Սովետական Միության հերոս (1980): ՍՄԿԿ անդամ 1964-ից: Ավարտել է Խարկովի օդաչուական բարձրագույն զինվորական ավիացիոն ուսումնարանը (1963) և Յու. Ա. Գագարինի անվ. ռազմաօդային ակադեմիան (1977): ՍՍՀՄ տիեզերագնացների


Յու. Վ. Մալիշև

ջոկատում է 1967-ից: 1980-ի հունիսի 5—9-ը, Վ. Վ. Ակսյոնովի հետ, որպես հրամանատար թռիչք է կատարել «Սոյուզ Տ-2» տիեզերանավով: Հունիսի 6-ին տիեզերանավը կցվել է «Սալյուտ-6»—«Սոյուզ-36» ուղեծրային համալիրին, և տիեզերագնացները թռիչքը շարունակել են «Սալյուտ-6» կայանով՝ Լ. Ի. *Պոպովի* և Վ. Վ. *Ռյումինի* հետ: Մ. ու Վ. Վ. Ակսյոնովը վայրէջք են կատարել «Սոյուզ Տ-2» տիեզերանավով 1980-ի հունիսի 9-ին:

**ՄԱԼԻՇԿԱ**, գետ Հայկական ՍՍՀ-ում, Արփայի աջ վտակը: Երկարությունը 16 *կմ* է, ավազանը՝ 69,1 *կմ*$^2$: Սկիզբ է առնում Թեքսար լեռնազանգվածի հվ. լանջից: Վերին հոսանքում հովիտը V-աձև է՝ 150—200 *մ* խորությամբ: Ունի խառը սնում, հորդանում է մայիսին, սելավաբեր է (ցեխաքարային): Գետաբերանի մոտ առաջացրել է արտաբերման կոն (մոտ 10 *կմ*$^2$): Տարեկան միջին ծախսը՝ մոտ 0,5 *մ*$^3$*/վրկ*:

**ՄԱԼԻՇԿԱ**, գյուղ Հայկական ՍՍՀ Եղեգնաձորի շրջանում, Արփա գետի աջ ափին, շրջկենտրոնից 4,5 *կմ* հարավ-արևելք: Մ-ով է անցնում Եղեգնաձոր—Ջերմուկ ավտոխճուղին: Կոլտնտեսությունն զբաղվում է խաղողագործությամբ, ծխախոտագործությամբ, պտղաբուծությամբ և անասնապահությամբ: Ունի միջնակարգ և ութամյա դպրոցներ, կուլտուրայի տուն, ակումբ, գրադարան, կապի բաժանմունք, կենցաղսպասարկման տաղավար, մանկապարտեզ, բուժկայան: Գյուղում և շրջակայքում պահպանվել են եկեղեցի, «Ղազա-չայ» և «Սոլյանի» (միջնադար) ամրոցները, Մոզ քաղաքատեղին (VII—XV դդ.), «Փշացոլ», «Դաշալթի» գյուղատեղիները, խաչքարեր, դամբարաններ, խաչքարերով գերեզմանոցներ (X—XV դդ.):

Մալիշկա



**ՄԱԼԻՊԻԵՐՈ** (Malipiero) Ջան Ֆ ր ա ն չ ե ս կ ո (1882—1973), իտալացի կոմպոզիտոր, երաժշտագետ: Երաժշտական կրթությունն ստացել է Վիեննայում, Վենետիկում, Բոլոնիայում: Դասավանդել է Պարմի (1921—24), Վենետիկի (1932—53) կոնսերվատորիաներում, Մ-ի երաժշտությունը կրել է իմպրեսիոնիզմի և նեոկլասիցիզմի ազդեցությունը: Լավագույն գործերում հիմնվում է իտալ. ժող. և հնագույն երաժշտության ավանդույթների վրա: Օպերաների (30-ից ավելի, գրեթե բոլորը սեփական տեքստերով), այդ թվում երեք եռագրությունների՝ «Օրփեիդներ» (բեմ. 1925), «Գոլդոնիի երեք կատակերգությունները» (բեմ. 1926), «Վենետիկյան միստերիա» (բեմ. 1932), սիմֆոնիաների (11), նվագախմբային երկերի (այդ թվում՝ «Արմենիա», 1917), մենագրությունների (Կ. Մոնտեվերդիի, Ա. Վիվալդիի, Ի. Ֆ. Ստրավինսկու մասին) ևն հեղինակ է:

**ՄԱԼԼԱՐՄԵ** (Mallarmé) Ստեֆան (1842—1898), ֆրանսիացի բանաստեղծ: 1870—1880-ական թթ. ֆրանս. *սիմվոլիզմի* առաջատար ներկայացուցիչներից: Լինելով դեմոկրատականորեն տրամադրված, բուրժ. իրականությունից դժգոհ, իդեալի ծարավ («Լազուր», «Պատուհաններ», «Ժամհարը» բանաստեղծություններ) և պատրաստ իմպրեսիոնիստական դիրքերից գնահատելու աշխարհի գեղեցկությունը («Մի այծամարդու հետմիջօրեն», 1876)՝ Մ. հանգեց այն ողբերգական ըմբռնմանը, թե պոեզիան ու կյանքը կապ չունեն իրար հետ («Կարապը», 1885), թե պոեզիան պետք է լինի ծայրահեղորեն ինքնամփոփ («Արձակ՝ Դեզեսենտի համար», 1885), միայն սիմվոլների միջոցով գերզգայականը հաղորդող («Պոեզիայի գաղտնիքը», 1896, հոդված): Բուրժ. քննադատությունը Մ-ին ընդունում էր միայն որպես սիմվոլիստ ու էսթետ, մինչդեռ նըրան հատուկ էր նաև ձգտումը դեպի իրականը, դեպի պոեզիայի դասական բովանդակալից ձևերը («Բանաստեղծություններ ըստ առիթի», 1880—98): Մ-ի պոեզիայի էությունը բացահայտվեց «Հաջողությունը չի բացասում պատահականությունը» (1897) պոեմում, որն անողոք քննադատում է սիմվոլիստական պոեզիայի՝ իրականությունից վեր կանգնելու փորձերը: Հայ իրականության մեջ Մ-ի ստեղծագործությանը անդրադարձել են Մ. Մեծարենցը և ուրիշներ: Զգալի է նրա պոեզիայի երաժշտականության ազդեցությունը Ինտրայի «Նոճաստան» սոնետների ժողովածուի և «Ներաշխարհ» գրքի վրա: Հայերեն են թարգմանված Մ-ի «Ծաղիկներ»-ը (1898, «Անահիտ» հանդես), «Հայտնություն», «Լազուր», «Ծովային սյուք» («Ծաղկաքաղ ֆրանսիական դասական քնարերգության», 1976) բանաստեղծությունները:

**ՄԱԼԽԱՍՅԱՆ** Եկատերինա Աշոտի (ծն. 17.3.1919, Թիֆլիս), հայ սովետական դաշնակահարուհի, մանկավարժ: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1967): ՍՄԿԿ անդամ 1949-ից: 1941-ին ավարտել է Մոսկվայի կոնսերվատորիան (դասատու Կ. Ն. Իգումնով): 1942—47-ին Վրաստանի ֆիլհարմոնիայի մենակատարուհի: 1947-ից դասավանդում է Երևանի կոնսերվատորիայում (1968-ից՝ պրոֆեսոր): Համերգացանկում տեղ են գտել Շոպենի, Սկրյաբինի, Բեթհովենի, Շումանի և հայ կոմպոզիտորների դաշնամուրային երկերը:

*Ծ. Աթոյան*

**ՄԱԼԽԱՍՅԱՆ** Էդուարդ Գուրգենի (ծն. 23.2.1926, Թբիլիսի), հայ սովետական երկրաբան: Երկրաբանա-հանքաբանական գիտ. դ-ր (1971): ՍՄԿԿ անդամ 1947-ից: Ավարտել է Երևանի համալսարանը (1949): 1951—54-ին եղել է Մոսկվայի նավթի ինստ-ի ավագ գիտ. աշխատող, 1954—1976-ին՝ ՀՍՍՀ ԳԱ երկրաբանական գիտությունների ինստ-ի ավագ գիտ. աշխատող, բաժնի վարիչ: 1976-ից աշխատում է Կովկասի միներալային հումքի ինստ-ի հայկ. բաժանմունքում որպես գլխավոր երկրաբան: Մ-ի աշխատություններում լուսաբանված են Հայաստանի խորքային մագմատիզմի, մեզոզոյի հրաբխականության և դրանց հետ կապված հանքայնացման հարցերը, ինչպես նաև երկրաբանության պատմության պրոբլեմներ: Երկրաբանության պատմության միջազգային կոմիտեի թղթակից անդամ է (1967), ՍՍՀՄ Պետրոգրաֆիական կոմիտեի անդամ (1971):

*Երկ.* Интрузивы Даралагяза, Е., 1958; Юрский вулканизм Армении, М., 1965 (соавтор А. П. Лебедев); Геологическое развитие и вулканизм Армении в юрский период, Е., 1975.

**ՄԱԼԽԱՍՅԱՆ** Կոնստանտին Հովհաննեսի (ծն. 7.7.1916, Մոսկվա), ՍՍՀՄ վաստակավոր փորձարկող-շտուրման, ռազմաօդային ուժերի պահեստի գնդապետ: ՍՄԿԿ անդամ 1951-ից: Ավարտել է Երևանի աերոակումբի հրահանգիչ-օդաչուների օդաչուական դպրոցը (1937): Մասնակցել է Չինաստանում ճապոնական զավթիչների դեմ մղված մարտերին (1937), սովետա-ֆիննական պատերազմին (1939—40), Հայրենական մեծ պատերազմին (1941—45): Մ. 1947—66-ին Ա. Ն. Տուպոլևի փորձարարական ԿԲ-ի շտուրման-փորձարկողներից էր, փորձարկել է Տու-104, Տու-114, Տու-124, Տու-134 առաջին փորձնական մարդատար ինքնաթիռները: 1956-ին Տու-98 ծանր ինքնաթիռով, անձնակազմի հետ, աշխարհում առաջինը, զարգացրել է գերձայնային արագություն, ինչպես նաև Տու-104 և Տու-114 ինքնաթիռներով մասնակցել արագության և բարձրության 30 համաշխարհային ռեկորդներ սահմանելուն: 1959-ին, որպես գլխավոր շտուրման, Տու-114 ինքնաթիռով Մոսկվայից անվայրէջք թռիչք է կատարել Վաշինգտոն, Նյու Յորք, Պեկին: Պարգևատրվել է Կարմիր դրոշի 2, Հայրենական պատերազմի 1-ին աստիճանի, Կարմիր աստղի 5 շքանշաններով:

**ՄԱԼԽԱՍՅԱՆ** Հովհաննես Մկրտչի [1.9.1866, գ. Սուլդա (այժմ՝ ՎՍՍՀ Ախալքալաքի շրջանում)—10.6.1931, Երևան], հայ գյուղագիր, մանկավարժ, հասարակական գործիչ: 1881—85-ին սովորել է Գևորգյան ճեմարանում, որտեղից հեռացվել է աշակերտական խռովություններին մասնակցելու համար: 1887—97-ին դասավանդել է

Կովկասի հայաբնակ քաղաքներում: 1903-ին ցարական կառավարությունը Մ-ին աքսորել է Նոր Նախիջևան, ապա՝ Ռուսաստանի խորքերը: 1905-ին վերադառնալով Թիֆլիս՝ ծավալել է մանկավարժական-հասարակական գործունեություն: Ծննդավայրում հիմնել է դպրոց և բարեգործական ընկերություն, պարբերական մամուլում («Մուրճ», «Նոր դար») անդրադարձել ժամանակի հրատապ հարցերին: 1907—09-ին Նոր Նախիջևանում հրատարակել է «Մեր ձայնը» օրաթերթը և հակացարական հոդվածներ տպագրելու համար 1909-ին նորից բանտարկվել է: 1924-ից բնակություն է հաստատել Երևանում: Մ-ի առաջին ծավալուն գործը «Երդում» (1895) վեպն է: Այնուհետև լույս են տեսել նրա «Պատանեկան հուշեր» (1896) չափածո ժողովածուն, «Մեր բարեկամները» (1910) արձակ գրքույկը, «Հանցանք» (1913) էտյուդը: Գրել է պիեսներ («Ավազի վրա», 1914, «Ծիլեր», «Կյանքի հեքիաթը», «Հիվանդանոց»), որոնք բեմադրվել են Թիֆլիսում: Մ. հարուստ նյութ է տալիս ազգագրության («Հայ գեղջուկի ալբոմը», մաս 1—2, 1898—1901) ուսումնասիրման համար: Գյուղական կյանքից վերցված պատմվածքների ժողովածու է «Հորոտ-Մորոտ»-ը (գիրք 1—4, 1898—1927, 2-րդ հրտ., 1959): Նար-Դոսի հետ կազմել ու հրատարակել է «Գիր և կյանք» (1911) մայրենի լեզվի դասագիրքը:

Մ. իր ստեղծագործություններում պայքարել է սոցիալական ճնշման ու շահագործման, տգիտության ու հետամնացության դեմ, ժխտել բուրժ. քաղաքակրթությունն ու բարքերը, բայց իրեն հուզող հարցերի պատասխանը որոնել է բարոյախոսության մեջ:

*Երկ.* Երկեր, Ե., 1967: *Ա. Բեժանյան*

**ՄԱԼԽԱՍՅԱՆ** Վիգեն Արամայիսի (ծն. 3.9.1921, Երևան), հայ սովետական վիրաբույժ: Բժշկ. գիտ. դ-ր (1960), պրոֆեսոր (1961): ՍՄԿԿ անդամ 1962-ից: 1943-ին ավարտել է Երևանի բժշկ. ինստ-ի բուժական ֆակուլտետը: Աշխատել է Երևանի էվակուացիոն հոսպիտալում, Վ. Ի. Լենինի անվ. հանրապետական կլինիկական հիվանդանոցում, նույն հիվանդանոցի ընդհանուր վիրաբուժության ամբիոնում: 1960-ից Բժիշկների կատարելագործման Երևանի պետ. ինստ-ի ամբիոնի վարիչ է: Գիտական աշխատությունները վերաբերում են մարսողության օրգանների վիրաբուժությանը:

*Երկ.* Техника типических операций на желудке, Е., 1963; Дуоденальная культя, Е., 1968; Дренирование грудного лимфатического протока в хирургической практике, М., 1979.

**ՄԱԼԽԱՍՅԱՆՑ** Ստեփան Սարգսի [25.10 (7.11), 1857, Ախալցխա —21.7.1947, Երևան], բանասեր, լեզվաբան, բառարանագիր: Բանասիրական գիտ. դ-ր (1940), ՀՍՍՀ ԳԱ հիմնադիր կազմի անդամ, ակադեմիկոս (1943): Նախնական կրթությունն ստացել է տեղի Կարապետյան ծխական դպրոցում: 1874—78-ին սովորել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանում, 1878-ին ընդունվել է Պետերբուրգի համալսարանի արլ. լեզուների ֆակուլտետը, աշակերտել է Ք. Պատկանյանին: 1889-ին ավարտել է



Ս. Ս. Մալխասյանց

նույն ֆակուլտետի հայ-սանսկրիտ և հայ-վրացական բաժինները, ստացել թեկնածուի գիտական աստիճան: Այնուհետև հայոց լեզու և գրականություն է դասավանդել հայկ. դպրոցներում, աշխատակցել ժամանակի պարբերականներին: 1885-ին Պետերբուրգում լույս է ընծայել Ստեփանոս Տարոնացու (Ասողիկ) «Պատմութիւն տիեզերական» (առաջաբան Կ. Եզյանցի) առաջին լուրջ ուսումնասիրությունը՝ գիտ. տեքստով և ծանոթագրություններով: Բանասիրական հետազոտություններից հիշատակելի են «Ուսումնասիրություն Փավստոս Բուզանդի պատմության» (1896), «Սեբեոսի պատմությունը և Մովսես Խորենացի» (1899), Մովսես Խորենացու «Հայոց պատմություն» (ընդարձակ ուսումնասիրությամբ, թարգմանությամբ և ծանոթագրություններով, 1940), «Խորենացու առեղծվածի շուրջը» (1940), «Փավստոս Բուզանդ. Պատմություն Հայոց» (ներածությամբ, թարգմանությամբ և ծանոթագրություններով, 1947) գործերը, հրատարակել է մատենագիրների համեմատական տեքստեր (Ղևոնդ Մեծի «Պատմութիւն Հայոց», Կ. Եզյանցի առաջաբանով, 1887, Ղազար Փարպեցու «Պատմութիւն Հայոց և Թուղթ առ Վահան Մամիկոնեան», Գ. Տեր-Մկրտչյանի հետ, 1904, Ամիրդովլաթ Ամասիացու «Օգուտ բժշկության», 1940), «Դասընթաց հայոց մատենագրության պատմության», 1899, «Համառոտ պատմություն Ներսիսյան հոգևոր դըպրոցի...» (1900) ևն: Մ-ի լեզվաբանական հետազոտություններից կարևոր են «Գրաբարի հոլովումը, խոնարհումը և նախդիրները» (1891) և «Գրաբարի համաձայնությունը» (1892) աշխատությունները, որոնք երկար ժամանակ գործածվել են որպես գրաբարի ձեռնարկներ: «Գրաբարի համաձայնությունը» գրքում Մ. հանգամանորեն քննության է առել գրաբարի շարահյուսությունը: Նախաբանում, անդրադառնալով մի շարք ընդհանուր լեզվաբանական հարցերի, հարել է երիտքերականներին, ընդունել նրանց հնչյունական օրենքները, սակայն լեզուն որպես հոգեբանական գործոն դիտելու հարցում հեռացել է նրանցից, ժխտել անհատական լեզուների դրույթը և ընդունել ժողովրդի, հանրության լեզուն: Մ., քննելով հայերենի բարբառների առաջացման հարցը, եկել է այն համոզման, որ բարբառներ եղել են նաև գրերի գյուտից առաջ, և գրաբարը ժամանակի բարբառներից (Արարատյան) մեկն է, որը բարձրացել է գրական լեզվի աստիճանի: Մ. զբաղվել է աշխարհաբար գրական լեզուների (արևելահայերենի և արևմտահայերենի) զարգացման հարցերով, հայոց լեզվի հոլովական դրության, ուղղագրության, տաղաչափության, գիտական տերմինաբանության և այլ խնդիրներով: Երկար տարիների ուսումնասիրության արդյունք է հայ բառարանագրության կոթողներից մեկը՝ «Հայերեն բացատրական բառարան»-ը (հ. 1—4, 1944—45, ՍՍՀՄ պետ. մրցանակ՝ 1946): Այն ընդգրկում է գրաբարի, միջին հայերենի, ժամանակակից հայերենի (երկու տարբերակով) և բարբառների բառամթերքը, հին և նոր փոխառյալ բառերը (պարսկերենից, եբրայերենից, հունարենից, ասորերենից, ռուսերենից և այլ լեզուներից), ոճական կիրառությունները (հաստատված օրինակներով), քերականական և բանասիրական ցուցումներով: Բառարանն ընդգրկում է հայերենի մոտ 120 000 բառ. այն իր տեսակի մեջ անգերազանցելի է առ այսօր: Մ. որպես համահեղինակ մասնակցել է նաև նեղ մասնագիտական մի շարք բառարանների կազմման աշխատանքներին: Բնագրից թարգմանել է Վ. Շեքսպիրի «Լիր թագավոր»-ը (1887), «Մակբեթ»-ը (1892), Գ. Էբերսի «Մարդ եմ» (1898) վեպը:

*Երկ.* Ստեփան Սարգսի Մալխասյանց, Ե., 1962 (Նյութեր հայ գիտնականների կենսագրության և բիբլիոգրաֆիայի համար):

*Կ. Դուրգարյան*

**ՄԱԼԿՈ**, հայաբնակ խուտոր ՌՍՖՍՀ Կրասնոդարի երկրամասի Ապշերոնսկի շրջանում, շրջկենտրոնից 3 *կմ* հյուսիս: Սովետական տնտեսությունն զբաղվում է անասնապահությամբ, ծխախոտագործությամբ, այգեգործությամբ: Ունի տարրական դպրոց: Մ. հիմնադրել են Սամսունից և շրջակայքից եկած հայերը, 1870-ին:

**ՄԱԼՄՅՈ** (Malmö), քաղաք և նավահանգիստ Շվեդիայի հարավում, Էրեսուն նեղուցի արևելյան ափին: Մալմյոհուս լենի վարչական կենտրոնն է: 247 հզ. բն., արվարձաններով՝ ավելի քան 400 հզ. (1975): Երկաթուղային հանգույց է, ունի օդանավակայան (Բուլտոֆտա): Լաստով կապվում է Կոպենհագենի հետ: Կա մեքենաշինություն, էլեկտրատեխնիկական, ցեմենտի, քիմ. արդյունաբերություն, տեքստիլի, կարի, ալրաղացի և այլ ձյուղեր: Զննորսական նավատորմի կայան է: Առաջին անգամ հիշատակվել է XII դ.: Մինչև 1658-ը պատկանում էր Դանիային:

**ՄԱԼՅԱՆ** Դավիթ Մելքումի [4(17).4.1904, Զաքաթալա —17.7.1976, Երևան], հայ սովետական դերասան: ՍՍՀՄ ժող. արտիստ (1974): ՍՄԿԿ անդամ 1942-ից: 1922—1923-ին սովորել է Թիֆլիսի Հայարտան դրամատիկական ստուդիայում: Աշխատել է Երևանի Սունդուկյանի անվ. (1924—1926), Թբիլիսիի (1926—27), Լենինականի (1928—29), Երևանի Բանվորական (1930—32) թատրոններում: 1932-ից՝ կրկին Սունդուկյանի անվ. թատրոնի դերասան (1952—53-ին՝ դիրեկտոր): Հանդես է եկել դասական պիեսներում, սակայն Մ-ի դերասանական ակտիվ խառնվածքը հատկապես դրսևորվել է նոր, սովետական մարդուն մարմնավորող կերպարներում: Մ. ստեղծել է բնորոշ կերպարներ՝ դրամատիկական և կատակերգական ժանրերում: Լավագույն դերերից են՝ Վահագն (Ա. Գուլակյանի «Արշալույսին»), Կարսեցյան (Ն. Զարյանի «Փորձաղաշտ»),



Դ. Մ. Մալյան

Կակուլի (Սունդուկյանի «Պեպո»), Օթարյան, Սմբատ (Շիրվանզադեի «Պատվի համար», «Քաոս»), Թուսյան («Սպանված աղավնին», ըստ Նար-Դոսի), Օգնև (Կոռնեյչուկի «Ռազմաճակատ»), Ժադով, Պարատով (Ա. Օստրովսկու «Եկամտաբեր պաշտոն», «Անօժիտը»), Կլավդիոս, Լաերտ, Յագո (Շեքսպիրի «Համլետ», «Օթելլո»): Մ. մեծապես նպաստել է հայկ. կինոարվեստի ձևավորմանն ու զարգացմանը: 1926-ից նկարահանվել է կինոյում. Մակիչ («Զանգեզուր»), Արամ («Սևանի ձկնորսները», երկուսն էլ՝ 1938), Վարդան («Լեռնային արշավ», 1939), Շահումյան («Դավիթ Բեկ», 1944), Կոռ («Անձամբ ճանաչում եմ», 1958): Նրան մեծ համբավ է



Դ. Մ ա լ յ ա ն ը Կակուլիի դերում (կադր «Պեպո» կինոնկարից, 1935, ռեժ. Հ. Բեկնազարյան)

բերել Կակուլիի («Պեպո», 1935) դերակատարումը: Մ-ի դերակատարումներին հատուկ է կերպարների հոգեբանությանը հարազատ չափավոր շարժուձևն ու զսպվածությունը: Հյուրախաղերով հանդես է եկել Բուլղարիայում և Չեխոսլովակիայում: Հեղինակ է «Դեմքեր, հանդիպումներ» գրքի (Ե., 1974): ՀՍՍՀ II գումարման Գերագույն սովետի դեպուտատ: Արժանացել է ՍՍՀՄ պետ. մրցանակների (1950, 1952): Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի 2 շքանշանով:

*Գրկ.* Ա ր ա ք ս մ ա ն յ ա ն Ա., Դավիթ Մալյան, Ե., 1975: *Բ. Հովակիմյան*



Դ. Մ ա լ յ ա ն ը Լոպախինի դերում (Չեխովի «Բալենու այգին»)

**ՄԱԼՅԱՆ** Հենրիկ Սուրենի [ծն. 30.9.1925, Թելավ (Վրաց. ՍՍՀ-ում)], հայ սովետական կինոռեժիսոր: ՀՍՍՀ ժող. արտիստ (1977): Ավարտել է Երևանի գեղարվեստա-թատերական ինստ-ի ռեժիսորական ֆակուլտետը (1951): 1951—54-ին աշխատել է Արտաշատի, Կիրովականի, Ղափանի թատրոններում, ուր բեմադրել է Ա. Օստրովսկու «Եկամտաբեր պաշտոն» (1951), Գոլդոնիի «Վենետիկյան երկվորյակներ» (1952), Պարոնյանի «Պաղտասար աղբար» (1953), ավելի ուշ՝ Սունդուկյանի



Կադր «Նահապետը» կինոնկարից (1977), ռեժ. Հ. Մ ա լ յ ա ն

անվ. թատրոնում՝ Վ. Սարոյանի «Խաղողի այգին» (1971) պիեսները: 1953-ին կատարելագործվել է Մոսկվայի թատերարվեստի ինստ-ին կից բարձրագույն ռեժիսորական դասընթացներում: 1954-ից աշխատում է «Հայֆիլմ» կինոստուդիայում: Առաջին ֆիլմերից են՝ «Նվագախմբի տղաները» (1960, Հ. Մարգարյանի հետ), «Ճանապարհ դեպի կրկես» (1963, Լ. Իսահակյանի հետ), «Մայր ժակը և ուրիշներ» (1964), որոնք հիմնականում քնարական-կատակերգական բնույթի են: Իր լավագույն ֆիլմերում՝ «Եռանկյունի»-ն (1967, ՀՍՍՀ պետ. մրցանակ, 1975), «Մենք ենք, մեր սարերը» (1969), «Հայրիկ» (1972), «Նահապետը» (1977), «Կտոր մը երկինք» (1980, ըստ Վ. Թոթովենցի «Բաց կապույտ ծաղիկներ» պատմվածքի), պատկերել է ժամանակակից սովետական մարդկանց, նրանց ճակատագրերը, մտորումներն ու ապրումները՝ շաղկապելով դարի խոշոր իրադարձություններին, սոցիալ-հասարակական խմորումներին: Մ. նախընտրում է ոչ ծավալուն սյուժեներ և ձգտում հասնել իմաստային լայն ընդհանրացումների, հոգեբանական խորության: Մ-ի ֆիլմերը ցուցադրվել են համամիութենական և միջազգային փառատոներում, արժանացել մրցանակների: 1971-ից դասավանդում է Երևանի Խ. Աբովյանի անվ. մանկավարժական ինստ-ում, 1975-ից՝ ռեժիսուրայի և դերասանի վարպետության ամբիոնի վարիչ: Պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով: *Է. Մանուկյան*

**ՄԱԼՈԶԵՄԵԼՅԱՆ ՏՈՒՆԴՐԱ**, դաշտավայր Տիմանի բլրաշարի և ստորին Պեչորայի միջև, ՌՍՖՍՀ-ի Արխանգելսկի մարզի Նենեցական ինքնավար օկրուգի սահմաններում: Ռելիեֆը հարթավայրային է, ճահճոտ: Կան ջերմակարստային և սառցադաշտային լճեր: Կլիման խիստ է՝ երկարատև ձմեռներով, կարճ ու զով ամառներով: Հունվարի միջին ջերմաստիճանը —16-ից մինչև —17°C է, հուլիսինը՝ 8—12°C, տարեկան տեղումները՝ 300—350 *մմ:* Տարածված է տունդրան: Զբաղվում են եղջերվաբուծությամբ, ձկնորսությամբ և մորթեղենի արդյունագործությամբ: Կա ձկնարդյունաբերություն:

**ՄԱԼՊԻԳԻ** (Malpighi) Մարչելլո (1628—1694), իտալացի կենսաբան, բժիշկ, Լոնդոնյան թագավորական ընկերության անդամ: Սովորել է Բոլոնյան համալսարանում: Նույն համալսարանի բժշկագիտության դոկտոր (1653), պրոֆեսոր (1656—1691): Բույսերի և կենդանիների միկրոսկոպիական անատոմիայի հիմնադիրներից է: 180 անգամ խոշորացնող մանրադիտակով հետազոտել է բույսերի բջջային կառուցվածքը, հայտնագործել տրաքեաները, հաստատել նյութերի վերընթաց ու վարընթաց հոսքերի առկայությունը, բացահայտել տերևների դերը բույսերի սնուցման գործում: Նկարագրել է փայծաղի ավշային մարմնիկները, երիկամային կծիկները, սարդակերպերի, բազմոտանիների և միջատների արտաթորության օրգանները, մաշկի ծլական շերտը (այդ գոյացությունները կոչվել են Մ-ի անունով), ինչպես նաև արյան մարմնիկները, թոքերի ալվեոլները, լեզվի համային պտտիկները են: Մ. հայտնագործել է մազանոթային արյան շրջանառությունը:

**ՄԱԼՐՈ** (Malraux) Անդրե (ծն. 3.11.1901, Փարիզ), ֆրանսիացի գրող և քաղաքական գործիչ: Սովորել է Փարիզի կենդանի արև. լեզուների ազգային ուսումնարանում: Մ-ի ուղևորությունները Հարավ-Արևելյան Ասիա (1923—27), որտեղ նա ծանոթացավ չին հեղափոխականների հետ, նրան մտոբել տվին XX դ. արմ. քաղաքակրթության ճգնաժամի մասին («Արևմուտքի գայթակղությունը», 1926, «Եվրոպական երիտասարդությանը», 1927) և նյութ՝ առաջին վեպերի («Նվաճողները», 1928, «Թագավորական ճանապարհ», 1930, «Մարդկության գոյության պայմանները», 1933) համար: Մ. 1930-ական թթ. մասնակցել է ֆաշիզմի դեմ ուղղված միջազգային շարժմանը՝ ի պաշտպանություն մշակույթի, սակայն չի բաժանել ոչ մարքսիզմի փիլ., ոչ էլ կոմունիստների գաղափարախոսությունը, որոնց հետ համագործակցում էր: 1935-ին հրատարակել է հիտլերյան զնդաններում տառապողներին նվիրված «Արհամարհանքի տարիներ» վիպակը: Իսպանիայում ազգային-հեղափոխական պատերազմի (1936—39) ժամանակ եղել է հանրապետությանը պաշտպանող օտարերկրացի կամավոր օդաչուների էսկադրիլիայի հրամանատար [պատերազմի առաջին տարին պատկերված է «Հույս» (1937) գործում]: 1943-ին Ֆրանսիայում ներգրավվել է Դիմադրության շարժման մեջ, գլխավորել պարտիզանական միավորում, որը շուտով վերածվել է բանակային բրիգադի: Դեռևս 30-ական թթ. վերջերից նկատվել է, որ Մ. սկսել է հեռանալ հեղափոխական հումանիզմից («Ալտենբուրգի ընկուզենիները», 1943). այդ պրոցեսն իր վերջնակետին է հասել 1948-ին՝ «Կոչ մտավորականներին» ճառով, որը մշակույթի մեջ «սառը պատերազմի» մանիֆեստ էր: 1959—69-ին Մ. եղել է Ֆրան-

սիայի կուլտուրայի մինիստրը: Որպես գրող այլևս հանդես չի եկել, բայց տպագրել է արվեստի փիլ-յան վերաբերյալ բազմաթիվ աշխատություններ («Լռության ձայները», 1953 են), ինչպես նաև հուշագրություններ («Հակամեմուարներ», 1967, «Կաղնին այն ծառն է, որ կտրում են...», 1971): Մ. XX դ. ֆրանս. գրականության ճանաչված վարպետներից է:

**ՄԱԼՑ** (Maltz) Ալբերտ (ծն. 1908, Նյու Յորք), ամերիկացի գրող: Ծնվել է հարուստ հրեայի ընտանիքում: Գրական ասպարեզ է իջել հակաբուրժուական, հակապատերազմական և սուր սոցիալական պիեսներով («Կարուսել», 1932, «Խաղաղություն երկրի վրա», 1934, «Մութ հանքահոր», «Շարքային Հիքս», 1935): Իրական նյութերի հիման վրա գրված «Խորքային աղբյուր» (1940) վեպը նվիրված է Ֆորդի գործարանների բանվորների պայքարին: Գերմանիայում ֆաշիզմին ցույց տրված դիմադրությունն է «Խաչ և նետ» (1944) վեպի թեման: 1957-ին լույս է ընծայել «Կարճատև կյանքի երկար օրը» սուր դրամատիկական վեպը: Հայտնի է նաև Մ-ի հակաֆաշիստական հրապարակախոսությունը («Գրողը ժողովրդի խիղճն է», «Պատմողայան դատավճիռը», «Բանտարկվելու նախօրեին»):

*Երկ.* Դեպք փողոցի անկյունում, Ե., 1963: Պատմվածքներ, Ե., 1953:

**ՄԱԼՑԵՎ** Անատոլի Իվանովիչ (1909—1967), սովետական մաթեմատիկոս: ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս (1958): Ավարտել է Մոսկվայի համալսարանը (1931): 1932—1960-ին աշխատել է Իվանովոյի մանկավարժական ինստ-ում, 1942—60-ին՝ ՍՍՀՄ ԳԱ Ստեկլովի անվ. մաթ. ինստ-ում, 1960-ից՝ ՍՍՀՄ ԳԱ Սիբիրյան բաժանմունքում և Նովոսիբիրսկի համալսարանում: Հիմնական աշխատանքները վերաբերում են հանրահաշվին և մաթ. տրամաբանությանը: Արմատական արդյունքներ է ստացել խմբերի տեսության, օղակների և գծային հանրահաշիվների տեսության, տոպոլոգիական հանրահաշվի, ալգորիթմների տեսության և այլ բնագավառներում: Մ. հանրահաշվական համակարգերի ընդհանուր տեսության և մոդելների տեսության ստեղծողներից է: Նրա այսպես կոչված տեղային (լոկալ) թեորեմները սկիզբ դրեցին հանրահաշվում մաթ. տրամաբանության մեթոդների հետևողական կիրառմանը: ՍՍՀՄ IV և V գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Արժանացել է լենինյան (1964) և պետ. (1946) մրցանակների:

**ՄԱԼՑԵՎ** Տերենտի Սեմյոնովիչ (ծն. 1895), գյուղատնտեսական արտադրության նորարար, սոցիալիստական աշխատանքի կրկնակի հերոս (1955, 1975), ՀամԳԳԱ պատվավոր ակադեմիկոս (1956): ՍՄԿԿ անդամ 1939-ից: Անդրուրալի և Արևմտյան Սիբիրի շրջանների համար առաջարկել է հողի մշակման նոր համակարգ՝ առանց առը շրջելու խորը վար: Այս համակարգը «Լենինի պատգամները» (Կուրգանի մարզ) կոլտնտեսությունում ներդնելու համար պարգևատրվել է Ի. Վ. Միչուրինի անվ. ոսկե մեծ մեդալով (1954): ՍՍՀՄ II—V գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Պետ. մրցանակի դափնեկիր (1946): Պարգևատրվել է Լենինի 3 և այլ շքանշաններով:

*Գրկ.* Иванов Л. И., Терентий Мальцев, М., 1962.

**ՄԱԼՈՒԼ** (Սարգսյան Գալուստ, 1823, Կարս —1887, Ալեքսանդրապոլ), հայ աշուղ: Նվագել է ջութակ: Ապրել է պարտիզպանությամբ: Հեղինակ է հարյուրավոր երգերի: Գրել է աշուղական արվեստի բոլոր ժանրերով: Երգերի թեման իրական աշխարհին է, աշխատավոր մարդու անապահով վիճակը, տիրող անարդարությունն ու բռնությունը: Մեծ մասամբ հորինել է թախծոտ երգեր: Մ. մեծ չարիք է համարում ծուլությունը, երկչոտությունն ու անտարբերությունը, գովերգում է աշխատանքը: Նրա երգերի զգալի մասը կորել է. 1884-ին հրատարակել է «Սիոնի երգեր» ժողովածուն: Մ-ի լեզուն գրական է: Նրա ժառանգությունը կարևոր է աշուղական դասական արվեստի կանոնների, տաղաչափության ուսումնասիրության առումով:

*Կ. Դուրգարյան*

**ՄԱԼՈՒԽ** էլեկտրական, պաշտպանական ծածկույթով պատված, հերմետիկ պատյանով մեկ կամ մի քանի մեկուսացված հոսանքատար ջղեր: Կիրառվում են էլեկտրաէներգիայի կամ էլեկտրական ազդանշանների հաղորդման համար: Մ-ների հիմնական կոնստրուկցիոն տարրերն են հոսանքատար ջղերը, մեկուսացումը և պատյանը: Մ-ները լինում են՝ ուժային (ցածրավոլտ, բարձրավոլտ, գերբարձրավոլտ), էլեկտրաէներգիայի հաղորդման և բաշխման (նկ. 1, 2), կապի՝ հեռախոսային և հեռագրային կապի, հեռուստատեսության, հեռուստամեխանիկայի (նկ. 3, 4), ստուգիչ՝ ազդանշանման, պաշտպանության, հեռակառավարման և չափման (նկ. 5) համար:




Նկ. 1. եռաջիղ մալուխի հատվածքներ (*ա*, *բ*)




Նկ. 2. պողպատե խողովակաշարում տեղադրված յուղով լցված բարձր ճնշման մալուխ (ՄՎԴՏ). *1*. միաջիղ մալուխ, *2*. յուղ (С—220), *3*. պողպատե խողովակաշար, *4*. հակակոռոզիոն պատվածք

Հոսանքատար ջղերը հիմնականում պատրաստվում են էլեկտրատեխնիկական պղնձից և ալյումինից: Կախված նշանակումից և շահագործման պայմաններից՝ հոսանքատար ջղերը կարող են ունենալ ճկունության տարբեր աստիճաններ. նորմալ (անշարժ միջադիրի համար), ճկուն (մոնտաժի ժամանակ մեծ ճկունություն պահանջող անշարժ միջադիրի համար), առանձնապես ճկուն (փոխադրման ենթակա): ՍՍՀՄ-ում ուժային Մ-ների համար առավել տարածված հատվածքներն են՝ 10, 16, 25, 35, 50, 70, 95, 120, 150, 240 *մմ*²: Հաճախ կիրառում են նաև 300, 400, 500, 625, 800 և 1000 *մմ*² հատվածքով Մ-ներ: Կապի Մ-ներում հոսանքատար ջղերը նորմավորվում են ըստ տրամագծի (0,5—1,4 *մմ*):




Նկ. 3. ԿՄԲ—8/6 մակնիշի կոմբինացված համառանցք մալուխ



Նկ. 4. պոլիէթիլենային մեկուսանյութով համառանցք մալուխ



Նկ. 5. ԿՆՐԳ մակնիշի համառանցք մալուխի հատվածքը

Մ-ի մեկուսացումը նախատեսված է հոսանքատար ջղերը միմյանցից և պատյանից մեկուսացնելու համար: Ուժային Մ-ներում ջղերը մեկուսացվում են նավթային և սինթետիկ յուղերով տոգորված տարբեր հաստության (0,045, 0,03, 0,12 և 0,17 *մմ*) մալուխային թղթով կամ խերտ գազով լցված թղթով, պոլիէթիլենով, պոլիվինիլքլորիդով, վուլկանացված ռետինով, կապի Մ-ներում՝ պոլիէթիլենով, օդապլաստմասսայով և կիսաօդային մեկուսացումով: Մեկուսացման հիմնական պարամետրերն են՝ մեկուսիչի ծավալային դիմադրությունը (Մ), դիէլեկտրիկ կորուստների անկյան տանգենսը (tgδ), դիէլեկտրիկ թափանցելիությունը (ℰ), էլեկտրական ամրությունը (E): Նշանակումից և շահագործման պայմաններից կախված մալուխային մեկուսացմանը ներկայացվում են հատուկ պահանջներ՝ ջերմակայունություն, խոնավակայունություն, ճառագայթակայունություն են: Պատյանը նախատեսված է ջղերի մեկուսացումը խոնավության, լույսի, քիմ. նյութերի ազդեցությունից և մեխանիկական վնասվածքներից պաշտպանելու համար: Պատյանը հիմնականում պատրաստվում է մետաղից (պողպատե ժապավեններ, կապարի և ալյումինի համաձուլվածքներ),

պոլիէթիլենից և պոլիամիդային խեժերից: Պաշտպանական ծածկույթները (պողպատե ժապավեններ և տարբեր պրոֆիլի մետաղալարեր) ծառայում են պատյանը մեխանիկական վնասվածքներից և կոռոզիայից պաշտպանելու համար:

**ՄԱԼՈՒՄՅԱՆ** Խաչատուր (ծածկանունը՝ Է. Ա կ ն ու ն ի, 1860, Մեղրի —1915, Մեծ եղեռնի զոհ), հրապարակախոս, հասարակական գործիչ: 1880-ական թթ. վերջից աշխատակցել է «Մշակին», հետագայում, անցնելով դաշնակցության շարքերը, դարձել է այդ կուսակցության օրգան «Դրոշակի» (ժնև) թղթակիցը Կովկասում՝ ստորագրելով Է. Ակնունի: 1908-ից գործել է Կ. Պոլսում: Առանձին գրքերով հրատարակվել են նրա «Մտքի մշակը» (Գ. Արծրունու գրական գործունեության 25-ամյակի առթիվ, 1890), «Կովկասյան վերքեր» (հոդվածների ժող., 1903, ֆրանս. հրտ. 1904) և այլ գործեր: Թարգմանություններ է կատարել Վ. Գարշինից, Սալտիկով-Շչեդրինից և ուրիշներից:

*Գ. Ստեփանյան*

**ՄԱԼՈՒՆՑՅԱՆ** Միքայել Մովսեսի [25.4 (8.5).1903, Բաքու —20.2.1973, Երևան], հայ սովետական դիրիժոր, մանկավարժ: ՀՍՍՀ ժող. արտիստ (1956): Հայաստանի պետ. սիմֆոնիկ նվագախմբի հիմնադիր և գլխավոր դիրիժոր (1945—60, 1966—1967): 1921—25-ին սովորել է Թիֆլիսի կոնսերվատորիայի լարային (թավջութակ, դասատու՝ Կ. Մինյար), 1931—35-ին՝ Մոսկվայի կոնսերվատորիայի դիրիժորական (դասատու՝ Լ. Գինզբուրգ) բաժիններում: Դասավանդել է Երևանի (1927—31, 1945—73, 1962-ից՝ պրոֆեսոր) և Մոսկվայի (1934—45) կոնսերվատորիաներում: 1932-ին ղեկավարել է Համամիութենական ռադիոյի սիմֆոնիկ նվագախումբը: Մեծ ուշադրություն է նվիրել հայ հեղինակների գործերի պրոպագանդմանը: Մ-ի կատարմանը բնորոշ էր գեղարվեստական ճշմարտացիությունը, արտիստական զսպվածությունը, անսամբլային կատարելությունը: Նրա աշակերտներից են Ռ. Մանգասարյանը, Դ. Խանջյանը, Գ. Տերտերյանը:

*Գրկ.* Պ ե տ ր ո ս յ ա ն Մ., Երեքը հայ դիրիժորներից, Ե., 1976: *Մ. Պետրոսյան*

**ՄԱԽ** (Mach) Էռնստ (1838—1916), ավստրիացի ֆիզիկոս, *մախիզմի* հիմնադիրը: Ավարտել է Վիեննայի համալսարանը: 1864-ից՝ ֆիզիկայի պրոֆեսոր Գրացի համալսարանում, 1867-ից՝ Պրագայի գերմ. համալսարանի ռեկտոր, 1895—1901-ին՝ Վիեննայի համալսարանի փիլ-յան պրոֆեսոր: Մ. հետազոտել է լսողության և տեսողության պրոցեսները, մեխանիկական, օպտիկական, աերոդինամիկական զանազան երևույթներ: Մ-ի անունով են կոչվել ֆիզիկայի հասկացություններ և մեծություններ՝ Մ-ի կոն, Մ-ի անկյուն (տես *Բնութագրական կոն*), *Մախի թիվ* են: Մ. առաջարկել է սկզբունք՝ Մ-ի սկզբունք, ըստ որի մարմնի իներտ զանգվածը պայմանավորված է Տիեզերքի ամբողջ նյութի հետ փոխազդեցությամբ: Նա մերժել է ատոմիստական ուսմունքը: Մ-ի փիլիսոփայությունը XIX—XX դդ. սահմանագծի ֆիզիկայի ճգնաժամի արձագանքն էր: Բացարձակ տարածության և ժամանակի նյուտոնյան պատկերացումների Մ-ի քննադատությունը և դրանց հարաբերականացումը բարենպաստ տրամաբանական-իմացաբանական իրավիճակ ստեղծեցին հարաբերականության հատուկ տեսության ձևակերպման համար: Սակայն, ընդհանուր առմամբ, բնագիտության նոր փիլիսոփայություն ստեղծելու Մ-ի հավակնությունները, սուբյեկտիվ-իդեալիստական բնույթի պատճառով, ձախողվեցին: Մ. պնդում էր, որ աշխարհը զգայությունների կոմպլեքս է, իսկ աշխարհի օբյեկտիվ գոյության հարցը պետք է գիտության լեզվից հանվի: Մ-ի իդեալիստական գաղափարները խիստ քննադատել է Վ. Ի. Լենինը «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» երկում:

*Երկ.* Введение к учению о звуковых ощущениях Гельмгольца, СПБ, 1879; Анализ ощущений и отношение физического к психическому, 2 изд., М., 1908; Познание и заблуждение, М., 1909; Механика. Историко-критический очерк ее развития, СПБ, 1909; Популярно-научные очерки, 2 изд., СПБ, 1920; Принцип сохранения работы. История и корень ее, СПБ, 1909. *Ս. Մելիքյան*

**ՄԱԽԱ** (Máche) Կարել Հինեկ (1810—1836), չեխ բանաստեղծ: Մոտ էր կանգնած չեխական ազատագրական պայքարին և ձևավորվող արմատական-դեմոկրատական գաղափարախոսությանը: Փիլ. և մըտերմիկ քնարերգության մեջ, «Մայիս» (1836) պոեմում, «Կրշիվոկլադ» (1834), «Գնչուներ» (1835) վիպակներում, «Իմ կյանքից» (1834) օրագրային էտյուդներում Մ. հանդես է եկել որպես չեխական հեղափոխական ռոմանտիզմի ներկայացուցիչ: Նրա պոեզիայի բովանդակությունն են ազատության խռովահույզ ձգտումը, ոգու և նյութի փիլ. առեղծվածները, բնության ներդաշնակության և մարդկային հարաբերությունների աններդաշնակության հակադրությունը:

**ՄԱԽԱՉԵԿ** (Machatschek) Ֆրից [1876, Վիշաու (այժմ՝ Վիշկով, Չեխոսլովակիայում)—1957, Մյունխեն], գեոմորֆոլոգ, աշխարհագրագետ: Ավարտել է Վիեննայի համալսարանը: Եղել է Ավստրիայի, Չեխոսլովակիայի, Շվեյցարիայի, Արգենտինայի բուհերի պրոֆեսոր: Դաշտային հետազոտություններ է կատարել Արևմտյան Եվրոպայում, Միջին Ասիայում և Հյուսիսային Ամերիկայում: Զբաղվել է Երկրի ռելիեֆի և գեոտեկտոնիկայի ուսումնասիրություններով: Կազմել է վեցլեզվյան «Գեոմորֆոլոգիական բառարան»-ը: Աշխատություններից թարգմանվել են ռուսերեն:

**ՄԱԽԱՉԿԱԼԱ** (մինչև 1922-ը՝ Պետրովսկ Պորտ), Դաղստանի ԻՍՍՀ մայրաքաղաքը (1923-ից): Նավահանգիստ է Կասպից ծովի արմ. ափին, երկաթուղային կայարան և օդանավակայան: 261 հզ. բն. (1980): Կան մեքենաշինական և մետաղամշակման, նավթարդյունահանող, քիմ., տեքստիլ, սննդի արդյունաբերության ձեռնարկություններ, շինանյութերի արտադրություն: Գործում են Մ.—Գրոզնի, Մ.—Իզբերբաշ նավթամուղները, Մ.—Դերբենդ գազամուղը: Այստեղ է ՍՍՀՄ ԳԱ Դաղստանի մասնաճյուղը: Ունի համալսարան, պոլիտեխնիկական, գյուղատնտ., բժշկ., մանկավարժական ինստ-ներ, 10 միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություն, թատրոններ, ֆիլհարմոնիա, թանգարաններ: Հիմնադրվել է 1844-ին, վերանվանվել ի պատիվ հեղափոխական Մախաչ Դախադաևի:

**ՄԱԽԱՐԱՁԵ** Ֆիլիպ Իեսեևիչ (1868—1941), սովետական պետական գործիչ, գրականագետ: Կոմունիստական կուսակցության անդամ 1903-ից: Սովորել է Վարշավայի անասնաբուժական ինստ-ում: Ուսանողական շրջանում հարել է տեղի ս-դ. շարժմանը: 1893-ին ձերբակալվել է և արտաքսվել հայրենիք: 1903-ին ընտրվել է ՌՍԴԲԿ



Ֆ. Ի. Մախարաձե

Կովկասյան միութենական կոմիտեի անդամ: Մասնակցել է 1905—07-ի հեղափոխությանը: 1915-ին՝ ՌՍԴԲԿ Կովկասյան բյուրոյի անդամ: Մասնակցել է Թիֆլիսի սովետի կազմակերպմանը (1917): Եղել է ՌՍԴԲ(բ)Կ VII համառուսաստանյան (ապրիլյան) կոնֆերանսի պատվիրակ: 1917-ի հոկտեմբերին ընտրվել է ՌՍԴԲ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեի անդամ: 1918—21-ին ընդհատակյա աշխատանք է կատարել Վրաստանում: 1921-ին ընտրվել է Վրաստանի Հեղկոմի նախագահ, 1922-ից՝ Վրաստանի Կենտգործկոմի նախագահ, այնուհետև եղել է Անդրֆեդերացիայի Պետպլանի, Վրաստանի Ժողկոմխորհի, Անդրֆեդերացիայի Կենտգործկոմի նախագահ: 1938-ից Վրաստանի Գերագույն սովետի Նախագահության նախագահն էր: Եղել է ՍՄԿԿ XII, XIII, XV—XVIII համագումարների պատվիրակ: ՍՄԿԿ XV համագումարում ընտրվել է Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամ: Մասնակցել է Կոմինտերնի II կոնգրեսին (1920): Պարգևատրվել է Լենինի շքանշանով:

**ՄԱԽԱՐԱՁԵ** (մինչև 1934-ը՝ Օզուրգեթի), քաղաք, Վրացական ՍՍՀ Մախարաձեի շրջանի կենտրոնը: Գտնվում է Նաթանեբի գետի ափին: 22 հզ. բն. (1970): Կան թեյի, մետաքսաթելի ֆաբրիկաներ, բենթոնիտի, ավտոդողերի նորոգման, պահածոների գործարաններ, սննդարդյունաբերության տեխնիկում, բժշկ. ուսումնարան, հայրենագիտական թանգարան, թատրոն: Մ-ի մոտակայքում են թեյի և մերձարևադարձային կուլտուրաների ու թեյի արդյունաբերության համամիութենական ԳՀԻ-ները: Վերանվանվել է ի պատիվ Ֆ. Ի. *Մախարաձեի*: Քաղաք է 1840-ից:

**ՄԱԽԻ ԹԻՎ**, M—թ ի վ, գազի հոսանքի հիմնական բնութագրիչ: Հավասար է գազի հոսանքի v արագության և հոսքի նույն կետում ձայնի տարածման a արագության հարաբերությանը՝ $M=\frac{v}{a}$: Գազում

մարմնի շարժման դեպքում Մ. թ. հավասար է մարմնի արագության և այդ միջավայրում ձայնի տարածման արագության հարաբերությանը: Կոչվել է Է. *Մախի* անունով: Մ. թ. նաև աերոդինամիկական նմանության հիմնական հայտանիշներից է այն դեպքերում, երբ գազի սեղմելիությունը չի կարելի անտեսել: Օդում սեղմելիությունն անհրաժեշտ է հաշվի առնել v>100 *մ/վրկ* արագությունների դեպքում, որոնց համապատասխանում է M>0,3 թիվը: Երբ M<1, հոսանքը կոչվում է մինչձայնային, M=1 դեպքում՝ ձայնային, M>1 դեպքում՝ գերձայնային: *Գերձայնային հոսանքի* հիմնական առանձնահատկություններից է *հարվածային ալիքի* առաջացումը՝ մարմինների շրջահոսքի կամ գազի հոսքի արգելակման դեպքում: Էներգիայի դիսիպացիայի հետևանքով հարվածային ալիքում առաջանում է ալիքային դիմադրություն, որն աճում է Մ. թ-ի մեծացման հետ: Հոսանքի տիրույթները, որոնց համար M>5 (հիպերձայնային հոսանք), օժտված են մի շարք առանձնահատկություններով, մասնավորապես, էական են դառնում հարվածային ալիքում սեղմվող գազի ֆիզիկաքիմիական փոխակերպումները: Տես նաև *Գազային դինամիկա*:

**ՄԱԽԻ ԿՈՆ**, տես *Բնութագրական կոն*:

**ՄԱԽԻԶՄ**, XIX դարի վերջի — XX դարի սկզբի սուբյեկտիվ իդեալիստական ուղղություն՝ այսպես կոչված «երկրորդ *պոզիտիվիզմ*», որի հիմնական տեսական դրույթները մշակել են Է. *Մախը*, Ռ. *Ավենարիուսը* (տես *Էմպիրիոկրիտիցիզմ*) և նրանց աշակերտներն ու համախոհները (Ի. Պետցոլդ, Ֆ. Կարստանյեն, Ռ. Վիլի, Կ. Պիրսոն): Մախը, իսկ այնուհետև Մ-ին հարած ֆիզիկոսները (Պ. Դյուհեմ, Վ. Օստվալդ, Ա. Պուանկարե) փորձում էին լուծել դասական ֆիզիկայի ճգնաժամի առնչությամբ ծագած իմացաբանական դժվարություններն ու մեթոդաբանական խնդիրները: Նրանք զգալի դեր խաղացին ֆիզիկական նոր պատկերացումների ձևավորման գործում՝ նպաստելով փորձնական հիմնավորում չունեցող մտակառույց («մետաֆիզիկական») էությունների արտաքսմանը ֆիզիկայից: Սակայն Մ-ում դա հասավ ամեն տեսակ վերացական հասկացությունների, առհասարակ մտահասու էությունների (հատկապես փիլ. «սուբստանց», «մատերիա», «ոգի», «պատճառականություն» են) ճանաչողական նշանակության ժխտմանը: Համապատասխանաբար, Մ-ի իմացաբանությունը սուբյեկտիվիստական *էմպիրիզմ* է՝ ֆենոմենալիզմ. ճանաչողության հիմքում այն դնում է անմիջական զգայական փորձը, որի վերջնական «տարրեր» համարում է զգայությունները: Վերացվում է հոգեկանի և ֆիզիկականի հակադրությունը. զգայությունները և նրանց կոմպլեքսները, դիտված զգայող սուբյեկտի հետ ունեցած հարաբերության տեսակետից, կազմում են հոգեբանության առարկան, իսկ դրանց օբյեկտիվացումը, դրանց դիտարկումն իբրև առարկայի ու նրա հատկությունների մասին զգայական տվյալների, կազմում է ֆիզիկայի (բնագիտության) առարկան: Սուբյեկտի և օբյեկտի հակադրության այսպիսի վերառմամբ Մ. իր փիլիսոփայությունը հռչակում է մատերիալիզմից և իդեալիզմից վեր կանգնած՝ «երրորդ», «չեզոք» գիծ: Մարդկային ճանաչողությանը Մ. տալիս է կենսաբանական մեկնաբանություն՝ նրա վրա տարածելով կենսաբանական հարմարմանը հատուկ «ուժերի նվազագույն ծախսման» սկզբունքը: Գիտական ճանաչողության մեջ դա, ըստ Մախի, դրսևորվում է որպես «մտածողության տնտեսման» մեթոդաբանական պահանջ: Գիտության էությունը և նպատակը համարվում են զգայությամբ տրված փորձնական տվյալների նկարագրությունը: «Զուտ նկարագրության» այս մեթոդաբանական սկզբունքի տեսակետից բնագիտության տեսական ընդհանրացումները լավագույն դեպքում աշխատանքային հիպոթեզներ են, և նրանց չպետք է վերագրել օբյեկտիվ բովանդակություն: Դրանով իսկ Մ. հետևում է հյումիստական ագնոստիցիզմի գծին: Ռուսաստանում ռեակցիայի և գաղափարական տարընթացության տարիներին Մ-ին հարել են մի խումբ սոցիալ-դեմոկրատ մտավորականներ (Ա. Բոգդանով, Վ. Բազարով, Ն. Վալենտինով, Պ. Յուշկևիչ են): Եղել են նաև հայ մախիստներ (Ե. Ֆրանգյան): Վ. Ի. Լենինը *«Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ»* աշխատության մեջ վերլուծել է Մ., բացահայտել նրա գաղափարական հետադիմական դերը:

*Գրկ.* Պլեխանով Գ. Վ., Materialismus militans, Փիլիսոփայական ընտ. երկ., հ. 3, Ե., 1964: Бакрадзе К. С., Очерки по истории новейшей и современной буржуазной философии, Тб., 1960, гл. 2; Богомолов А. С., Немецкая буржуазная философия после 1865 года, М., 1969, гл. 3.

**«ՄԱԽԼԱՍ»**, գրական, երգիծական պատկերազարդ շաբաթաթերթ: Լույս է տեսել 1913—15-ին, Թիֆլիսում: Խմբագիր-հրատարակիչ՝ Ս. Լաշքարյան: Քննադատել ու ծաղրել է հայ իրականության խորթ բարքերն ու երևույթները, ազգայնական գործիչներին: Տպագրել է ծաղրանկարներ, ֆելիետոններ, երգիծական պատմվածքներ ու բանաստեղծություններ հայ, ռուս և եվրոպացի նշանավոր երգիծաբաններից, համաշխարհային և հայ դասականների աֆորիզմներ, ասույթներ: Շաբաթաթերթը պայքարել է ֆուտուրիզմի դեմ, խարազանել նրա հետևորդներին հայ գրականության մեջ:

*Վ. Մաղալյան*

**ՄԱԽՄՈՒՐՈՎԱ** Տատյանա (Մախմուրյան Թագուհի) Լևոնի [ծն. 9(22).1. 1910, Սուխում], հայ սովետական կինոդերասանուհի: ՀՍՍՀ կուլտուրայի վաստ. գործիչ (1975): 1928-ին Հ. Բեկնազարյանի հրավերով նկարահանվել է «Տունը հրաբխի վրա» ֆիլմի գլխավոր հերոսուհու (Մարո) դերում: Նույն թվականից աշխատել է Հայկինոյում: 1936—37-ին սովորել է «Մոսֆիլմ»-ին կից դերասանական դպրոցում: Մ-ի լավագույն դերը Կեկելն է («Պեպո», ռեժիսոր՝ Հ. Բեկնազարյան, 1935): Այլ դերերից են՝ Մասունե («Հանդիպում», ռեժիսոր՝ Գ. Գոմարտելի, «Վրացֆիլմ» ստուդիա), Անահիտ («Լույս և ստվերներ», ռեժիսոր՝ Ի. Պերեստիանի, 1933), Նանի («Գիքոր», ռեժիսոր՝ Ա. Մարտիրոսյան, 1934), Գայանե («Դավիթ Բեկ», ռեժիսոր՝ Հ. Բեկնազարյան, 1944):

*Մ. Հարությունյան*



Տ. Մախմուրովան Կեկելի դերում (կադր «Պեպո» կինոնկարից, 1935)

**ՄԱԽՆՈՎՇՉԻՆԱ**, հակասովետական, անարխիստական, կուլակային-գյուղացիական շարժում Ուկրաինայում, 1918—1921-ին, անարխիստ Ն. Մախնոյի գլխավորությամբ: Մանր բուրժ. հակահեղափոխության տարատեսակներից: Մ-ի սոցիալական հենարանը Ձախափնյա Ուկրաինայի (Եկատերինոսլավի և Խարկովի նահանգներ) ունևոր գյուղացիությունն էր, սակայն շարժումն ընդգրկել է Դնեստրից մինչև Դոն ընկած տարածքը: Մ-ի «մայրաքաղաքը» Գուլյայպոլե քաղաքն էր (Եկատերինոսլավի նահանգ): Գերմ. օկուպացիայի շրջանում և սպիտակգվարդիականների օրոք, երբ կալվածատերերի վերադարձի վտանգ կար, Մ-ին հարեցին նաև գյուղացիների լայն խավեր: Սովետական իշխանության դեմ պայքարում մախնոյականները հիմնականում հենվում էին գյուղի ունևորների, իսկ 1921-ից՝ բացառապես կուլակության վրա, հանդես էին գալիս «անիշխանական պետություն» և «ազատ սովետներ» լոզունգներով, որը *փաստորեն նշանակում էր պայքար պրոլետարական պետության դեմ*: 1918-ի վերջին — 1919-ի սկզբին մախնոյականները կռվեցին ավստրո-գերմանական, ապա՝ պետլյուրական զորքերի դեմ: 1919-ի փետրվարին նրանք մտան սովետական 2-րդ ուկր., ապա 13-րդ բանակների կազմի մեջ, մարտ—մայիսին կռվեցին Դենիկինի զորքերի դեմ: Սակայն նրանք սաբոտաժի էին ենթարկում սովետական հրամանատարության հրամանները, հեռացնում կոմիսարներին: 1919-ի մայիսի վերջին Դենիկինի զորքերը ջախջախեցին մախնոյականներին: Մախնոն հրաժարվեց ենթարկվել կարմիր բանակի հրամանատարությանը, ինքնագլուխ հեռացավ ռազմաճակատից ու բացահայտ պայքար ընկըսեց սովետական իշխանության դեմ: 1920-ի գարնանն ու ամռանը, նայած իրադրությանը, մախնոյականները կռվում էին մերթ սպիտակգվարդիականների, մերթ կարմիր բանակի դեմ: 1920-ի նոյեմբերին Մ. Ֆրունզեի հրամանով սկսվեց Մ-ի լիկվիդացիան: 1921-ի օգոստոսին Մախնոն, խույս տալով հետապնդումից, մի քանի տասնյակ ձիավորներով անցավ Դնեպրը և հանձնվեց ռումին. իշխանություններին:

*Գրկ.* Семанов С. Н., Махновщина и ее крах, «Вопросы истории», 1966, № 9.

**ՄԱԽՈՒՅԱՆ** Վարդան Արիստակեսի (31.5.1869, Տրապիզոն —11.2.1937, Նիցցա), հայ նկարիչ: 1891—94-ին սովորել է Բեռլինի Գեղարվեստի ակադեմիայում, 1894-ին Ղրիմում կատարելագործվել Հ. Այվազովսկու արվեստանոցում, ուսումնասիրել ծովի պատկերման նրա մեթոդը: 1900-ին մեկնել է Բեռլին, 1904-ին դարձել Բեռլինի արվեստագետների միության անդամ: 1908—14-ին նորից ստեղծագործել է ծննդավայրում: Առաջին համաշխարհային պատերազմից հետո վերջնականապես հաստատվել է Նիցցայում: 1925-ին Փարիզում կազմակերպած անհատական ցուցահանդեսի համար նրան շնորհվել է ֆրանս. «Պատվո լեգիոն» շքանշան: Մ. պատկերել է ծովային տեսարաններ, ինչպես նաև այլ բնույթի



Վ. Ա. Մախոխյան

բնապատկերներ: Միջերկրականի, Սև ծովի մերձափնյա և ծովային այլ տեսարաններ պատկերող Մ-ի բնանկարներն աչքի են ընկնում խոր ռեալիզմով, նյութականությամբ, գունալուսային հարաբերությունների նրբությամբ, ծովի անեզր տարածության ընկալման ամբողջականությամբ ու կենսալիությամբ («Տրապիզոնի վանքը», «Փոթորիկ Սևաստոպոլի առաջ», «Հուզված ծովը վերջալույսին», «Բրետանի ափերը», «Ալիք», «Դանիական ափերը», «Ռուսական ստեպները», «Քատեկատը»): Ալիքը նրա համար մի պարզ էակ է՝ իր խորությամբ, բախման ուժգնությամբ: Թախծոտ, ներհուն, որոշ դեպքերում՝ դրամայի հասնող բնանկարներում Մ. արձագանքել է իր ժողովրդի ողբերգական իրադարձություններին: Հ. Այվազովսկուց հետո նա ամենանշանավոր ծովանկարիչն է հայ նոր կերպարվեստի պատմության մեջ: Մ. անհատական ցուցահանդեսներ է ունեցել Կահիրեում և Ալեքսանդրիայում (1904), Մյունխենում, Դյուսելդորֆում և Բեռլինում (1907), Լոնդոնում (1914), Փարիզում (1925), Մարսելում (1923), Նիցցայում (1932, 1936), մասնակցել է նաև «Անի» արվեստագետների խմբակցության ցուցահանդեսներին (1927—30-ին):

Մ-ի աշխատանքները գտնվում են Հայաստանի պետ. պատկերասրահում («Բնանկար», 1899, «Ծովային տեսարան», 1905, «Մակընթացություն», «Անհանգիստ ծովը»), Նիցցայի Գեղարվեստի թանգարանում, Էջմիածնի վանքի Վեհարանում և մասնավոր հավաքածուներում:

Գրկ. Ճ ի շ մ ա ն յ ա ն Ռ., Բնանկարն ու հայ նկարիչները, Ե., 1958:

Պատկերազարդումը տես 129-րդ էջից առաջ՝ ներդիրում:

**ՄԱԽՈՇԵ-ՊՈԼՅԱՆԱ**, գյուղ ՌՍՖՍՀ Կրասնոդարի երկրամասում, Ադըղեական Ինքնավար Մարզի Տուլսկի շրջանում, շրջկենտրոնից 18 *կմ* արևելք: Բնակչությունը՝ հայեր, ադըղեներ: Կոլտնտեսությունն զբաղվում է ծխախոտի և հացահատիկային կուլտուրաների մշակությամբ, անասնապահությամբ, մեղվաբուծությամբ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, կինո, բուժկայան:

Մ. հիմնադրել են Սամսունի շրջանից եկած հայերը, 1882-ին:

**ՄԱԽՈՐԿԱ** (Nicotiana rustica), մորմազգիների ընտանիքի նիկոտիանա ցեղի միամյա բույս: Ցողունի բարձրությունը՝ մինչև 120 *սմ*, արմատը առանցքային է, տերևները՝ կոթունավոր (ցողունի վրա՝ 12—20), լայն, սրտաձև: Ծաղկաբույլը հուրան է, ծաղիկները՝ դեղնականաչավուն: Պտուղը երկբուն բազմասերմ տուփիկ է: 1000 սերմը կշռում է 0,25—0,35 *գ*: Մ-ի չոր տերևները պարունակում են 1—10% նիկոտին, 15—20% օրգ. թթուներ (այդ թվում՝ մինչև 10% կիտրոնաթթու), իսկ սերմերը՝ 35—40% ճարպ, որը գործածվում է լաքերի, ներկերի ու օճառի արտադրության մեջ: Տերևները համապատասխան մշակումից հետո օգտագործվում են ծխելու համար, ինչպես նաև որպես քթախոտ կամ ծամելու խոտ: Մ-ից ստանում են նիկոտինաթթու (վիտամին PP), լիմոնաթթու, նիկոտինային պատրաստուկներ (նիկոտին սուլֆատ, նիկոդուստ), որոնք կիրառվում են արդյունաբերության ու բժշկության մեջ և գյուղատնտ. բույսերի վնասատուների դեմ պայքարելու համար: Մ-ի հայրենիքը Հարավային Ամերիկայի հս. մասն է: Եվրոպա է բերվել XVI դ. սկզբին:

ՍՍՀՄ-ում մշակում են Ուկրաինայի հս-ում, Բելոռուսիայում, ՌՍՖՍՀ Վորոնեժի, Տամբովի, Սարատովի, Վոլգոգրադի և այլ մարզերում:

Հայաստանում Մ. սկսել են մշակել XVII դ. վերջերից, մշակությունից հանված է 1920-ից:

**ՄԱԾՆԱԲԵՐԴԻ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆ**, ֆեոդալական կազմավորում Մեծ Հայքի Ուտիք նահանգի արևմտյան մասում, XII—XIII դարերում: Հիմնել է *Կյուրիկե Ա*-ի որդի Դավիթը (1113—45) մոտ 1113-ին, երբ *Կյուրիկյան թագավորության* անկումից հետո հաստատվել է Մածնաբերդում: Այդ ճյուղը Հայաստանի մանր ֆեոդալական տներից էր, ենթակա *Զաքարյանների* գերիշխանությանը և քաղ. կապեր ուներ հարևան իշխանությունների՝ Տավուշի, Հաթերքի, Նոր-բերդի տերերի ու վրաց Օրբելիների հետ: XII դ. 1-ին կեսին Մ. ի. պայքարի մեջ էր Գանձակի սելջուկ ամիրայության դեմ: Դավթի հաջորդներ Կյուրիկեի (1145—70) և Աբասի (1170—76) ժամանակաշրջանից Մ. ի-յան մասին տեղեկությունները սուղ են: XII դ. վերջին Նոր-բերդի Կյուրիկյանները փորձել են Աղսարթան Ա-ից (1176-ից) խլել Մածնաբերդը, բայց՝ ապարդյուն: 1236-ին, Աղսարթան Բ-ի օրոք, Մածնաբերդը ժամանակավորապես նվաճել են մոնղոլները: 1250-ական թթ. մոնղ. արշավանքներին (Նփրկերտ, Բաղդադ) մասնակցել է Թադիադինը, որի որդի Սարգիսը Մ. ի-յան մեզ հայտնի վերջին տիրակալն է: Մածնաբերդի Կյուրիկյանները մասնակցել են նաև հայ հոգևոր-մշակութային կյանքին (Աբասի քույր Մարիամը կառուցել է տվել Քոբայրի եկեղեցին ևն): Մ. ի. գոյատևել է մինչև XIII դ. վերջը:

Գրկ. Մ ա թ և ո ս յ ա ն Ռ. Ի., Դիտողություններ Կյուրիկյանների պատմության վերաբերյալ, «ՊԲՀ», 1968, № 3:

*Ռ. Մաթևոսյան*

**ՄԱԾՈՒՆ**, կաթնամթերք: Ստեղծվել է Հայկական լեռնաշխարհում: Պատրաստում են եռացրած և մինչև 30—35° սառեցրած կաթի հետ մակարդ (մերան) խառնելով (որպես մերան օգտագործվում է հիմնականում թթված Մ.): Մերան չլինելու դեպքում գործածվում է մակարդախոտը (մակարդուկ, կաթնախոտ): Մերանի քանակից, կաթի ու տեղի ջերմաստիճանից է կախված Մ-ի թթվայնության աստիճանը: Մ., որպես սննդամթերք, օգտագործվում է ինքնին, ինչպես և այլ կերակուրների (տոլմա, եփած կանաչեղեն, խմորով ճաշեր ևն) հետ՝ սխտորով համեմված: Մ-ով պատրաստում են մածնապուր, մածնաբրդոշ ևն: Մ. հարելով խնոցու մեջ՝ ստանում են կարագ և թան: Երկար ժամանակ պահելու, հաճախ՝ ողջ ձմեռվա համար, Մ. տոպրակով քամում են, լցնում կճուճի մեջ, բերանը ծածկում կաշվե կտորով և վրան լցնում ճարպ (հերմետիկ դարձնելու նպատակով): Ձմեռվա համար երբեմն պաշարվում է նաև մածնասեր: Մ. կիրառվում է նաև որպես դեղամիջոց թունավորումների դեմ:

*Լ. Պետրոսյան*

**ՄԱԾՈՒՑԻԿԱՉԱՓ**, *մածուցիկության* չափող սարք: Տարբերում են Մ-ի հետևյալ տեսակները. մազական (որոշվում է նեղ խողովակներով որոշակի քանակության հեղուկի հոսքի ժամանակը, նկ.), գնդիկավոր (որոշվում է այն ժամանակը, որի ընթացքում ընկնող գնդիկն անցնում է հետազոտվող հեղուկի որոշակի հաստության շերտով), ռոտացիոն (չափվում է ոլորող




Մ ա զ ա կ ա ն մ ա ծ ո ւ ց ի կ ա չ ա փ. ունի երկու լայնացում (Գ և Դ). Գ—աշխատանքային ծավալ, Բ—մազանոթ, Ա—ծունկ, ա, բ—օղականիշեր

մոմենտը կամ հետազոտվող հեղուկով բաժանված երկու համառանցք մարմիններից մեկի պտտման անկյունային արագությունը), ուլտրաձայնային (չափվում է հետազոտվող հեղուկի մեջ տեղադրված մագնիսաստրիկցիոն նյութի թիթեղում տատանումների մարման արագությունը): Տես նաև *Մածուցիկաչափություն*:

**ՄԱԾՈՒՑԻԿԱՉԱՓՈՒԹՅՈՒՆ**, վ ի ս կ ո զ ի մ ե տ ր ի ա, *մածուցիկության* չափման եղանակների համախումբ: Մածուցի-

կությունը որոշվում է *մածուցիկաչափով*, որի աշխատանքը հիմնված է գազերի ու հեղուկների հոսքի, ինչպես նաև մածուցիկ միջավայրում մարմինների շարժման օրենքների վրա: Մ-յան մեթոդների ու սարքերի կառուցվածքի բազմազանությունը պայմանավորված է ինչպես մածուցիկության արժեքների լայն տիրույթով ($10^{-5}\times$ $\times$*ն. վրկ/մ*$^2$-ից մինչև $10^{22}$ *ն. վրկ/մ*$^2$), այնպես էլ ցածր և բարձր ջերմաստիճանների ու ճնշումների պայմաններում մածուցիկությունը չափելու անհրաժեշտությամբ: Առավել տարածված են գազերի և հեղուկների Մ-յան երեք՝ մազական, ընկնող գնդի և համառանցք գլանների (ռոտացիոն) մեթոդները, որոնք համապատասխանաբար հիմնված են Պուազեյլի օրենքի, Ստոքսի օրենքի և համառանցք գլանների միջև հեղուկի հոսքի օրենքի վրա: Մածուցիկությունը որոշում են նաև պարբերական տատանումների ամպլիտուդի մարման կամ ոչ պարբերական շարժման արագության նվազման դիտումներով: Յուրահատուկ խումբ են կազմում միջավայրի չափազանց փոքր ծավալներում մածուցիկության (միկրոմածուցիկություն) չափման մեթոդները:

*Հ. Ծարշյան*

**ՄԱԾՈՒՑԻԿՈՒԹՅՈՒՆ**, ներքին շփում, 1. գազերի և հեղուկների՝ իրենց առանձին մասերի փոխադարձ տեղաշարժմանը դիմադրություն ցույց տալու հատկությունը: Քանակապես որոշվում է $\eta$ մեծության արժեքով, որը կոչվում է դինամիկական մածուցիկության գործակից կամ պարզապես Մ. (ներքին շփման գործակից): $1/\eta$ մեծությունը կոչվում է *հոսունություն*: Հաճախ դիտարկում են նաև $\nu=\eta/\rho$ մեծությունը, որը կոչվում է կինեմատիկական մածուցիկություն ($\rho$-ն գազի կամ հեղուկի խտությունն է): Միավորների միջազգային համակարգում Մ-յան միավորն ունի *ն. վրկ/մ*$^2$, իսկ CGS (ՍԳՎ) համակարգում՝ *գ/սմ. վրկ* (*պուազ*) չափայնություն. *1պզ*$=0{,}1$ *ն·վրկ/մ*$^2$: Կինեմատիկական Մ-յան միավորներն են, համապատասխանաբար, *մ*$^2$*/վրկ* և *սմ*$^2$*/վրկ* (*ստոքս*): Գազերի և հեղուկների Մ. որոշում են *մածուցիկաչափով*: Հաստատուն ջերմաստիճանում *լամինար հոսանքի* պայմաններում գազերի և նորմալ հեղուկների (այսպես կոչված, նյուտոնյան հեղուկներ) Մ. արագության գրադիենտից անկախ հաստատուն մեծություն է: Մ. նյութի կարևորագույն ֆիզիկաքիմիական բնութագիրն է: Մոլեկուլային-կինետիկ տեսությունն այն բացատրում է մոլեկուլների շարժմամբ և փոխազդեցությամբ: Գազերում Մ. պայմանավորված է արագ շարժվող շերտի մոլեկուլներից դանդաղ շերտի մոլեկուլներին շարժման քանակի փոխանցմամբ, իսկ սովորական հեղուկներում՝ մոլեկուլների շարժունակությունը սահմանափակող *միջմոլեկուլային փոխազդեցությամբ*:

Աղյուսակում բերված են որոշ հեղուկների և գազերի Մ-յան արժեքները:

Աղյուսակ

| Նյութ | η-ն 20°C-ի դեպքում՝ արտահայտված $10^{-3}$ *ն.* *.վրկ/մ*$^2$-ով կամ *սպզ*-ով |
|---|---|
| Ջրածին | 0,0088 |
| Ազոտ | 0,0175 |
| Թթվածին | 0,0202 |
| Ջուր | 1,002 |
| Էթիլ սպիրտ | 1,200 |
| Սնդիկ | 1,554 |
| Գլիցերին | ~1500 |

2. Մ. պինդ մարմիններում, տես *Ներքին շփում*:

*Հ. Ծարշյան*

**ՄԱԿ**, տես *Միավորված ազգերի կազմակերպություն*:

**ՄԱԿԱԲԱՑՄԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐ**, բաց մշակման դեպքում օգտակար հանածոն ծածկող և ներփակող ապարների հեռացում: Օգտակար հանածոներից զուրկ մակաբացման ապարները անվանում են դատարկ ապարներ: Դրանք հեռացվում են դեպի արտաքին կամ ներքին լցակույտերը: Եթե մակաբացման ապարները (օրինակ, կավերը, ավազները, կրաքարերը ևն) պիտանի են որպես շինանյութ, ապա դրանք հետագա մշակումից (ջարդում, տեսակավորում ևն) հետո ուղարկում են սպառողին: Մ. ա. ընդգրկում են ապարները հանման նախապատրաստելու պրոցեսները, հանման-բարձման աշխատանքները, փոխադրումը և լցակույտագոյացումը:

Մ. ա. տարվում են բացահանքի շինարարության ժամանակ՝ արդյունահանման աշխատանքների նախնական ճակատ ստեղծելու համար, և շահագործման ընթացքում՝ այդ ճակատը պահպանելու և ընդլայնելու նպատակով: Մ. ա-ի համար կիրառվում են ապարի զանազան փոխադրամիջոցներ և լցակույտային սարքավորումներ, ինչպես նաև հատուկ համալիրներ: Մ. ա. կարգավորվում են մշակման ընդունված համակարգերով (տես *Բաց հանքային աշխատանքներ*):

**ՄԱԿԱԲՈՒԾԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, պարազիտիզմ, օրգանիզմների փոխհարաբերություն, երբ մի օրգանիզմ (մակաբույծը) օգտագործում է մյուսին (տիրոջը) որպես ապրելու միջավայր և սննդի աղբյուր: Մ. օրգանիզմների համակեցության ձևերից մեկն է, որի որակական առանձնահատկությունն այն է, որ միայն մակաբույծն է օգտագործում տիրոջը (միակողմանի կախում): Տարբերում են արտաքին Մ. (էկտոմակաբուծականություն), երբ մակաբույծն ապրում է տիրոջ արտաքին ծածկույթների վրա, և ներքին Մ. (էնդոմակաբուծականություն), երբ մակաբույծն ապրում է տիրոջ օրգաններում և հյուսվածքներում: Մ. լինում է ժամանակավոր և մշտական: Ժամանակավոր Մ. արտահայտվում է տարբեր ձևերով. 1. մակաբույծը (օրինակ, արյունածուծ մոծակները) ազատ ապրում է արտաքին միջավայրում և տիրոջ վրա է հարձակվում միայն սնվելու նպատակով, 2. մակաբույծն (օրինակ, արգասային տզերը) ապրում է տիրոջից ոչ հեռու, 3. մակաբույծը (օրինակ, լվերը) տիրոջ վրա է անցկացնում իր ողջ կյանքը կամ զարգացման շրջանի մեծ մասը: Մշտական Մ-յան դեպքում մակաբույծը չի կարող ապրել առանց իր տիրոջ (օրինակ, մալարիայի պլազմոդիում, էխինոկոկ ևն): Մակաբույծները հաճախ այս կամ այն չափով վնասում են տիրոջը: Ախտածին մակաբույծի ներկայությունը հիվանդություն կարող է և չառաջացնել, սակայն տերը մակաբույծի տարածման աղբյուր է դառնում (մակաբուծակրություն): Շատ մակաբույծներ հակածիններ են և տիրոջ օրգանիզմում առաջացնում են հակամարմիններ, որն իր հերթին հանգեցնում է *իմունիտետի* ռեակցիաների: Մ-յան ուսումնասիրությամբ և մակաբույծների դեմ պայքարի միջոցների մշակման հարցերով զբաղվում են *պարազիտոլոգիան*, *մանրէաբանությունը*, *վիրուսոլոգիան* և *ֆիտոպաթոլոգիան*: Կենդանիների Մ., մակաբույծ տեսակներ հանդիպում են կենդանիների համարյա բոլոր խմբերում (բացի փշամորթներից և ուսոտանիներից): Քորդավորներից կիսամակաբույծ կյանք են վարում քարալեզները, միքսինները և որոշ արյունածուծ չղջիկներ: Կան դասեր և կարգեր, որոնք կազմված են միայն մակաբույծներից: Մակաբույծների տեր կարող են լինել և՛ կենդանիները, և՛ բույսերը: Հաճախ օրգանիզմը վարակվում է մակաբույծների մի քանի տեսակներով, որոնք փոխհարաբերությունների մեջ են մտնում ոչ միայն տիրոջ, այլև միմյանց հետ: Մեկ տիրոջ մակաբույծների ամբողջությունը կոչվում է պարազիտոցենոզ: Հանդիպում են մեկ կամ մի քանի տեսակների մակաբույծներ: Հաճախ կենսական լրիվ շրջանն անցնելու համար մակաբույծին անհրաժեշտ են 2 կամ նույնիսկ 3, երբեմն՝ կարգաբանորեն իրարից հեռու տերեր: Օրինակ, մալարիայի հարուցիչի տերեր են մոծակը և մարդը, էխինոկոկինը՝ մարդը և շունը ևն: Տերը, որի օրգանիզմում մակաբույծը սեռահասուն է դառնում և բազմանում սեռական ճանապարհով, կոչվում է վերջնական, իսկ որի օրգանիզմում անցնում են թրթուրային փուլերը՝ միջանկյալ: Մակաբույծների դեմ պայքարում կարևոր է նաև միջանկյալ տերերի և փոխանցողների ոչնչացումը: Բույսերի Մ., հայտնի են մակաբույծ բակտերիաներ, սնկեր, վիրուսներ, ծաղկավոր բույսեր ևն: Չկան մակաբույծ մամուռներ, պտերանմաններ և մերկասերմեր: Մակաբույծ բույսերի համար տեր կարող են լինել ոչ միայն բույսերը, այլև կենդանիները և մարդը: Բակտերիաների առաջացրած հիվանդություններից են անգինան, տուբերկուլոզը, ժանտախտը, խոլերան ևն: Սնկերը վնասում են մաշկը, մազերը, թոքերը ևն: Մակաբույծի թափանցումը բույսի հյուսվածքների մեջ կախված է նրա ֆիզիոլոգիական ակտիվությունից և բույսի դիմադրողականությունից: Մակաբույծ բույսերը լինում են քլորոֆիլակիր և քլորոֆիլազուրկ: Առաջինները կանաչ մակաբույծներ են և իրենք են սինթեզում օրգ. նյութեր, իսկ տիրոջից վերցնում են գլխավորապես ջուր և հանքային աղեր: Սրանք կոչվում են կիսամակաբույծներ (օմելա, ճրագախոտ ևն): Երկրորդները լրիվ մակաբույծներ են և տիրոջից վերցնում են և՛ օրգ., և՛ անօրգանական նյութեր: Հանդիպում են քիչ թե շատ պայմանական՝ ֆակուլտատիվ, և անպայման՝ օբլիգատ, մակաբույծ բույ-

սեր: Ֆակուլտատիվ մակաբույծները ավելի հաճախ վնասում են թուլացած բույսերին կամ բույսերի անգործունյա մասերին (օրինակ, պահվող մրգեր, բանջարեղեն են) և արագորեն մահացնում վարակված մասերը: Օբլիգատ մակաբույծները վնասում են գլխավորապես առողջ բույսերին: Սկզբում դրանք թույլ են ներգործում, հետո բույսի ֆոտոսինթեզը դադարում է, շնչառությունը ուժեղանում, բջիջները սկսում են մահանալ, իսկ մակաբույծն սպոր է առաջացնում և շուտով մահանում:

*Վ. Դավիդյանց*

**ՄԱԿԱԲՈՒՅԾՆԵՐ**, պ ա ր ա զ ի տ ն ե ր, ուրիշ օրգանիզմների (տիրոջ) հաշվին սնվող և հաճախ նրանց վնասող օրգանիզմներ: Մ. լինում են կ ե ն դ ա ն ա կ ա ն (նախակենդանիներ, որդեր, միջատներ են) և բ ու ս ա կ ա ն (բակտերիաներ, սնկիկներ, որոշ բարձրակարգ բույսեր են): Մ. են նաև *վիրուսները*: Արտաքին միջավայրի հետ Մ-ի փոխհարաբերությունն ամբողջությամբ կամ մասամբ կարգավորվում է տիրոջ միջոցով: Մ. հաճախ թուլացնում և հյուծում են տիրոջ օրգանիզմը, երբեմն հասցնում մահվան: Որոշ Մ-ի զարգացման լրիվ ցիկլի համար պահանջվում է 2—3 տեր: Մ. տիրոջ օրգանիզմ են թափանցում սննդի հետ, փոխանցողների միջոցով են: Մ. էվոլյուցիայի ընթացքում առաջացել են ազատ ապրող ձևերից և հարմարվել որոշակի պայմաններում ապրելուն: Փոխվել է դրանց կազմությունը, զարգացել են ֆիքսման հատուկ օրգաններ, առաջացել թթվածնազուրկ միջավայրում ապրելու ունակություն են: Բազմաթիվ Մ. մարդու, կենդանիների ու բույսերի մի շարք հիվանդությունների հարուցիչներ են: Տես նաև *Մակաբուծականություն*, *Պարազիտոլոգիա*:

**ՄԱԿԱԳԻՐ**, է պ ի գ ր ա մ ա (հուն. ἐπίγραμμα — մակագրություն), 1. եղերերգական երկտողով գրված, ազատ բովանդակությամբ քնարական կարճ բանաստեղծություն՝ անտիկ պոեզիայում: Աստիճանաբար ընդարձակվել է Մ-ի թեմատիկան՝ ընծայական, խրատա-ուսուցողական, տապանաքարի, նկարագրական, սիրային, երգիծական են: Հուն. գրականության մեջ Մ. ծաղկում է ապրել մ. թ. ա. III— մ. թ. I դդ. հելլեն բանաստեղծների, հռոմեականում՝ Մարցիալայի (մ. թ. I դ.) ստեղծագործություններում: Անտիկ Մ-ի ավանդույթները շարունակվել են բյուզանդական գրականության մեջ և միջնադարյան ու Վերածննդի լատ. գրականության մեջ: 2. Երգիծական կարճ բանաստեղծություն: Ձևավորվել է XVI—XVII դդ. ֆրանս. պոեզիայում: Բարձրակետին է հասել XVIII դ. (Վոլտեր, Ժ. Բ. Ռուսո, Գ. Լեսինգ, Ռ. Բյոռնս, Ա. Սումարոկով): Զուգընթաց զարգացել է նաև ոչ ավանդական Մ., որը հրատապ, հաճախ նաև քաղ. իրադարձությունների անմիջական արձագանքն է (Ա. Պուշկին, Վ. Մայակովսկի): Հայ հեղինակներից Մ-եր են գրել Ա. Ծատուրյանը, Ե. Չարենցը, Ն. Զարյանը և ուրիշներ:

**ՄԱԿԱԵՎ** Էնվեր Ահմադովիչ (ծն. 28.5. 1916, Մոսկվա), թաթար սովետական լեզվաբան: Բան. գիտ. դ-ր (1964), պրոֆեսոր (1971): Զբաղվել է ընդհանուր լեզվաբանության, հնդեվրոպական և գերմ. լեզուների պատմահամեմատական և տիպաբանական ուսումնասիրության («Հնդեվրոպական տարածքային լեզվաբանության պրոբլեմներ», 1964, «Նույնաձև ռունագիր արձանագրությունների լեզուն», 1965, «Բառի կառուցվածքը հնդեվրոպական և գերմանական լեզուներում», 1970, «Համեմատական լեզվաբանության ընդհանուր տեսություն», 1977 են), ինչպես նաև հայերենի պատմահամեմատական ուսումնասիրության հարցերով: Մ. «Գերմանական լեզուների համեմատական քերականության» (հ. 1—4, 1962—66) հեղինակներից է:

*Հ. Ասմանգուլյան*

**ՄԱԿԱԿՆԵՐ** (Macaca, Macacus), ցածրակարգ, նեղքիթ կապիկների սեռ: Մարմնի երկարությունը 34—65 *սմ* է, պոչինը՝ 5—70 *սմ*, քաշը՝ 3,5—18 *կգ*: Էգերը փոքր են արուներից: Գունավորումը դեղնագորշից մինչև սև: Հայտնի է 12 տեսակ. մեկը՝ Աֆրիկայի հս-ում և Պիրենեյան թերակղզում, մնացածը՝ Հարավային Ասիայում: Մ. ապրում են ծառերի վրա, մեկ տեսակը (մագոտ)՝ ժայռերում: Սնվում են պտուղներով, արմատներով, տերևներով, միջատներով, փափկամորթներով, խեցգետնակերպերով: Ապրում են մեծ, հիերարխիկ խմբերով (մեկ ուժեղ արու, էգեր ու տարբեր սերունդների ձագեր. ենթակա արուները երբեմն առանձին են ապրում): Ծնում են տարին մեկ ձագ, որը սեռահասուն է դառնում 3,5—4,5 տարեկանում:

**ՄԱԿԱԿՈՓՈՒՄ**, մետաղական նյութի կառուցվածքի և հատկությունների փոփոխում, որն առաջանում է պլաստիկ դեֆորմացիայի հետևանքով: Մ. փոքրացնում է նյութի պլաստիկությունն ու հարվածային ձիգությունը, մեծացնում համեմատականության և հոսունության սահմաններն ու կարծրությունը: Մակերևութային Մ-ման դեպքում նյութի մեջ մնացորդային լարվածային վիճակը փոփոխվում է, մեծանում նրա հոգնածային ամրությունը: Մ. առաջանում է կտրումով մշակման, հոլովակներով, գրտնակներով շրջագլման և կոտորուկներով հատուկ մշակման ժամանակ:

**ՄԱԿԱՄ**, որոշակի լադային հիմք ունեցող մեղեդային դարձվածք (համարժեք է *մակոմին*, մուկամին, *մուղամին*): Առաջացել է ժող. մեղեդիների հիման վրա: Իբրև ժողովրդա-պրոֆեսիոնալ արվեստի ժանր կենցաղավարում է արաբ., թուրք. և իրան. դասական մոնոդիկ երաժշտության մեջ: Յուրաքանչյուր Մ. բնութագրվում է իրեն հատուկ կերպարային-հուզական ոլորտով: Մ-ների հիման վրա կազմավորվում են իմպրովիզացիոն բնույթի փոքր և խոշոր ձևի ստեղծագործություններ: Խոշոր ձևերին հատուկ է երկու տարաբնույթ մասերի՝ «թաքսիմի» և «փեշիաթի» հաջորդականությունը:

*Լ. Երնջակյան*

**ՄԱԿԱՄՈՐՁԻ** (epididymis), *ամորձու* ետին եզրին գտնվող գոյացություն: Ծածկված է սպիտակուցային պատյանով, ապա՝ որովայնամզով: Ունի գլուխ, մարմին և պոչ: Մ-ու պարենքիմը կազմված է ամորձացանցից ծագող 12—15 արտատար ծորանիկներից, որոնցից ամենավերինը և ամենաերկարը (3—4 *մ*) կոչվում է Մ-ու ծորան: Վերջինս ամորձու ստորին բևեռի մոտ ծունկ կազմելով՝ ուղղվում է վեր և շարունակվում որպես սերմնածորան:

**ՄԱԿԱՄՈՐՁՈՒ ԲՈՐԲՈՔՈՒՄ**, է պ ի դ ի դ ի մ ի տ, լինում է ոչ առանձնահատուկ, առաջանում է ստաֆիլոկոկերով և ստրեպտոկոկերով ախտահարվելիս, և առանձնահատուկ՝ տուբերկուլոզային (առավել՝ հաճախ), գոնոռեային, բրուցելոզային, սիֆիլիսային: Հարուցիչները թափանցում են *մակամորձու* մեջ սերմնատար ծորանով, օրինակ, գործիքային միջամտության դեպքում (միզապարկի կաթետերիզացում, միզապարկադիտում են) կամ արյան միջոցով՝ գրիպի, անգինայի, բրուցելոզի, թոքաբորբի ևն ժամանակ: Մ. բ. ըստ կլինիկական ընթացքի լինում է սուր և քրոնիկական: Ս ու ր ը զարգանում է բուռն, *ամորձիների* ախտահարված հատվածում առաջանում են ցավեր, որոնք ճառագայթվում են դեպի աճուկային և զստափոսային շրջանները: Մարմնի ջերմությունը բարձրանում է 39—40°C, մակամորձին մեծանում է, դառնում պինդ, ցավոտ, ամորձու համապատասխան կեսը (երբեմն լրիվ) մեծանում է, մաշկը կորցնում է ծալքավորությունը, դառնում հարթ, գերարյունային: Ք ր ո ն ի կ ա կ ա ն Մ. բ-ման դեպքում ինֆիլտրատը լրիվ չի ներծծվում, պարբերաբար տեղի է ունենում պրոցեսի սրացում, սակայն ցավերը և ջերմային ռեակցիան թույլ են արտահայտվում: Բ ու ժ ու մ ը. հիմնական պատճառի վերացում:

Բարդությունները. երկկողմանի Մ. բ-ից հաճախ առաջանում է անպտղություն:

**ՄԱԿԱՆԱԽԱՂ**, հայկական ժողովրդական հնագույն մարզական թիմային խաղ: Խաղացել են հեծյալ և հետիոտն, որոնց մասին տեղեկություններ կան Մովսես Խորենացու, Հովհան Մամիկոնյանի, Թովմա Արծրունու աշխատություններում և «Սասնա ծռեր» էպոսում: Մ. տարածված է եղել Հայաստանի բոլոր գավառներում հինգ անվանումներով՝ «հեծյալ մականախաղ», «բռնուկ հոլ», «ճըգհոլ», «թըքհոլ» և «կուրտուն հոլ»: ՀՍՍՀ-ում ժամանակակից Մ-ով (*Հոկեյ* խ ո տ ի) զբաղվում են 1969-ից: 1970-ից ՀՍՍՀ-ի հավաքական թիմերը մասնակցում են բարձրագույն և «Ա» դասի առաջնություններին: 1971-ից անցկացվում են հանրապետական առաջնություններ: ՀՍՍՀ-ում աչքի են ընկնում ֆիզկուլտուրայի ինստ-ի (ՖԻՍԱ) և «Հրազդան» թիմերը:

**ՄԱԿԱՇԵՐՏ**, ա. որևէ լեզվում պահպանված հետքերը մի այլ լեզվի, որը տվյալ ժողովրդի համար եղել է մշակույթի, կառավարման, միջէթնիկական հաղորդակցման լեզու. բ. նվաճողների լեզու. այդպիսի ազդեցություն գործած լեզուն ինքը: Մ. զգացվում է մեծ մասամբ բառապաշարում (*փոխառություններ*, *պատճենումներ*) և շարահյուսության մեջ (հատկապես բարդ նախադասություններում և այլ կառուցվածքներում, որոնք հատկանշական են գրավոր խոսքին): Ժամանակակից հայերենի համար Մ. են գրաբարի միջոցով կատարված հուն., պարսկ. փոխառությունները:

**ՄԱԿԱՇՐՋԱՆԱԿ**, օժանդակ շրջանագիծ պտղոմեոսյան *երկրակենտրոն համակարգում*, մոլորակների ետընթաց շար-

ժումը բացատրելու համար: Ենթադրվում էր, որ մոլորակը պտտվում է Մ-ով, որի կենտրոնը, իր հերթին, պտտվում է մեկ այլ, ուղղորդ շրջանագծով՝ դ ե ֆ ե ր ե ն տ ո վ (< լատ. deferens — կրող), որի կենտրոնում գտնվում է անշարժ Երկիրը:

**ՄԱԿԱՍԱՐԻ ՆԵՂՈՒՑ**, Կալիմանտան և Սուլավեսի կղզիների միջև: Միացնում է Սուլավեսի և Ճավայի ծովերը: Երկարությունը 500 *կմ* է, լայնությունը՝ մոտ 200 *կմ*, խորությունը՝ մինչև 2458 *մ*: Հոսանքները ունեն մուսսոնային բնույթ: Նավահանգիստներն են Բալիկպապանը (Կալիմանտան կղզի) և Ուջունգպանդանգը (Սուլավեսի կղզի):

**ՄԱԿԱՍԱՐՆԵՐ**, ժողովուրդ: Բնակվում են Սուլավեսի կղզու հվ-արմ-ում (Ինդոնեզիա): Թիվը՝ մոտ 1,2 մլն (1979): Լեզուն պատկանում է ինդոնեզական լեզուներին: Դավանում են մահմեդականություն: Մարդաբանորեն պատկանում են հվ. մոնղոլոիդ ռասային: Զբաղվում են հիմնականում հողագործությամբ, ձկնորսությամբ, առևտրով:

**ՄԱԿԱՐ Ա ԹԵՂՈՒՏՑԻ** [6.4.1813, գ. Թեղուտ (Բիթլիսի վիլայեթի Բուլանըխի գավառում)—1891, Էջմիածին], Հայոց կաթողիկոս 1885-ից: 1864-ին նշանակվել է Վրաստանի հոգևոր թեմի առաջնորդ, 1876-ին՝ Նոր Նախիջևանի և Բեսարաբիայի թեմի առաջնորդ, 1883-ից՝ նաև Գևորգ Դ կաթողիկոսի տեղապահ: Նրա ջանքերով 1885-ին ցարական արքունիքը վերանայել է իր 1884-ի հունվ. 27-ի «Կովկասի հայ լուսավորչական եկեղեցական ուսումնարանների մասին» որոշումը, թույլատրել վերաբացել հայկ. դպրոցները, վերականգնել կաթողիկոսի իրավունքները: *Գ. Սարգսյան*

**ՄԱԿԱՐԱՎԱՆՔ**, միջնադարյան ճարտարապետական հուշարձանախումբ ՀՍՍՀ Իջևանի շրջանի Աչաջուր գյուղից 3 *կմ* հարավ-արևմուտք, Պայտաթափ լեռան լանջին: Գլխավոր եկեղեցին, ըստ նրանից հվ. կանգնեցված խաչքարի արձանագրության, կառուցվել է 1205-ին: Արտաքուստ ուղղանկյուն (13,5 *մ* × 9,5*մ*), ներքուստ խաչաձև, խորանի երկու կողմերում երկհարկ ավանդատներով գմբեթավոր հորինվածք ունի՝ կառուցված վարդագույն անդեզիտի սրբատաշ քարերով (հս-արմ. խորշը հետագայում վերակառուցվել է ավանդատան): Հվ. և արլ. ճակատները մշակված են եռանկյունաձև զույգ խորշերով (հս. պատի խորշերը ծածկվել են ավելի ուշ կառուցված գավթի ծածկով), գմբեթի (ծածկը քանդված է) կլոր թմբուկը զարդարված է զույգ կիսասյուների դեկորատիվ կամարաշարով: Արմ. դուռն ունի ճոխ զարդաձևերով շքամուտք, որի ճակտոնապատը բազմագույն քարերի շախմատաձև շարվածքով է: Գրեթե նույն ձևավորումն ունի գավթի մեջ բացվող հս. շքամուտքը: Եկեղեցու հվ. պատի լուսամուտի տակ՝ ճանկերում հորթ բռնած արծվի բարձրաքանդակ է, որն ուշագրավ է կատարման մեծ վարպետությամբ: Եկեղեցու լուսավոր և ընդարձակ ներսակողմում խիստ տպավորիչ է ու լուծումով ինքնատիպ խորանի հարդարանքը: Աբսիդի կիսաշրջանաձև պատը զարդարված է 13 զոգավոր խորշերով՝ միմյանցից բաժանված կամարակապ զույգ որմնասյուներով: Բեմի ճակատի ողջ մակերեսը ծածկված է միջնադարյան հայ արվեստի գլուխգործոցների թվին դասվող ութանկյուն աստղերի և ութանիստ բազմանկյունիների մեջ ներառված հարթաքանդակներով՝ երիզված հյուսկեն զարդերով կիսազլանաձև լայն շրջանակով: Ուշագրավ է ութանկյուն աստղերի մշակումը: Այստեղ հանդիպում են հուշկապարիկների, կենդանական և բուսական չկրկնվող զարդամոտիվներով հյուսկեն քանդակներ, աստվածաշնչային թեմայով (Հովհաննը կետի երախում) հարթաքանդակ ևն: Մ-ի ձկան քանդակները իրենց պլաստիկայով և կատարման ռեալիստական ոճով զուգահեռներ չունեն միջնադարյան հայ արվեստում: Աստղերից մեկի վրա կերտված է գործիքները ձեռքին եկեղեցու ճարտարապետի (և, անշուշտ, քանդակագործի) դիմաքանդակը և նրա անունը՝ «Երիտասարդ»: Մ-ի երկրորդ՝ հինագույն եկեղեցին (X—XI դդ.) համալիրի հս-արլ-ում է: Արտաքուստ ուղղանկյուն, ներքուստ շեշտված խաչաձև (բավական խոր թևերով) շինությունը հիմնականում կառուցված է կիսամշակ կարմրավուն տուֆի խոշոր քարերով, իսկ XIII դ. վերակառուցված ծածկը և գմբեթը՝ նույն տուֆի սրբատաշ քարերով: Հարդարանքի հիմնական տարրը բեմի ճակատի բուսական և երկրաչափական նուրբ զարդաքանդակներն են, որոնք ներառված են շեղանկյուն շրջանակների մեջ՝ հավանաբար սա նախօրինակ է ծառայել գլխավոր եկեղեցու բեմի զարդաքանդակների համար: Մ-ի գավիթը (XIII դ. 1-ին քառորդ), որ արլ-ից կից է հինագույն եկեղեցուն, իսկ հվ-ից՝ գլխավորին, գրեթե քառակուսի հատակագծով (13 *մ*×12,9 *մ*), չորս սյուներով կենտրոնակազմ հորինվածք ունի, կառուցված է վարդագույն անդեզիտի սրբատաշ քարերով: Արմ. շքամուտքի վրա կան հուշկապարիկի, աղյուծի և ցուլի մենամարտ պատկերող դինամիկ բարձրաքանդակներ: Առանձնապես հարուստ է գավթի ինտերիերի հարդարանքը: Միակտուր քարից չորս գլանաձև սյուները և որմնասյուները, կամարաղեղների միջև հարթ մակերեսները, ութանկյուն երդիկը (վրան բարձրացող սյունազարդ գմբեթի ռոտոնդան չի պահպանվել), անկյունային մասերի ծածկերի հարթ առաստաղները ունեն բուսական, երկրաչափական ճոխ զարդաքանդակներ, իսկ կամարների հիմքերին և սյուների խոյակներին կան դրախտահավքերի բարձրաքանդակներ: Գմբեթի հիմքի սալերին կան գավթի շինարար վարպետների անունների սկզբնատառերը: Գավթի և համալիրի հինագույն եկեղեցու հս-արլ. անկյունում պահպանվել են ուղղանկյուն հատակագծով (3,5 *մ* × 5 *մ*), սպիտակավուն քարով շինված նշխարատան (XIII դ.) պատերը: Հիմնական հուշարձանախմբից արլ. կանգուն է վարդագույն և կարմրավուն անդեզիտի սրբատաշ խոշոր քարերով շինված, ներքուստ խաչաձև (եռաբսիդ, արմ. ուղղանկյուն թևով), արտաքուստ ութանիստ (զետնախարիսխը շրջանաձև է) կենտրոնագմբեթ հորինվածքով Ս. Աստվածածին եկեղեցին, որը կառուցել է Մ-ի առաջնորդ Հովհաննեսը՝ 1198-ին: Լուսամուտների պսակներն ու խորշերի հովհարաձև մշակված կիսակոնաձև գագաթներն ընդգրկող գոտու վրա կան թռչունների, աղյուծների, վարդյակների, արծվի և վիշապի մենամարտ պատկերող հարթաքանդակներ: Գեղաքանդակ շքամուտքով դուռն արմ-ից է: Եկեղեցուն հս-ից կից է փոքրիկ, կիսավեր, թաղածածկ մատուռ: Մ-ի համալիրը իր զարդաքանդակների ինքնատիպությամբ, հարստությամբ և բազմազանությամբ դասվում է Աղթամարի, Բղենո Նորավանքի, Գանձասարի շարքին և կարևոր տեղ գրավում հայ ճարտ-յան մեջ:



Մակարավանքի գլխավոր հատակագիծը

Պատկերազարդումը տես 176-րդ էջից հետո՝ ներդիրում և 368—369-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակ I:

*Գրկ.* Սովետական Հայաստանի պատմական հուշարձանները, մաս 5, Ե., 1947 (կազմ. Եղիազարյան Հ.): Սարգսյան Գ., Մակարավանք, «Էջմիածին», 1954, № 2: Կարախանյան Գ., Մակարավանքի քանդակները և նրանց հեղինակը, «ՊԲՀ», 1974, № 4: Դիվան հայ վիմագրության, պր. 6, Ե., 1977 (կազմ. Ավագյան Ս. Ա., Ջանփոլադյան Հ. Մ.): *Մ. Հասրաթյան*

**ՄԱԿԱՐԴԱԿԱՉԱՓ**, ռեզերվուարներում, փակ անոթներում, ջրավազաններում, տեխնոլոգիական ապարատներում հեղուկի մակարդակը չափող սարք: Կան գծային (չափումը կատարվում է ձողաքանոնով), լողանային, հիդրոստատիկական (*մանոմետրի* սկզբունքով), էլեկտրական (կոնտակտների միացում), ֆոտոէլեկտրական (ֆոտոէլեմենտի վրա ընկնող լույսի փնջի ընդհատում), ռադիոիզոտոպային և այլ Մ-եր: Օգտագործվում են ջերմատեխնիկայում, հիդրոտեխնիկայում և այլուր:

**ՄԱԿԱՐԵՆԿՈ** Անտոն Սեմյոնովիչ [1(13).3.1888, Բելոպոլիե (այժմ՝ Սումիի մարզում)—1.4.1939, Մոսկվա], սովետական մանկավարժ և գրող: Սովորել է Կրեմենչուգի քաղաքային ուսումնարանում, դրան կից մանկավարժական կուրսերում (1905), 1917-ին ավարտել է Պոլտավայի ուսուցչական ինստ.: 1920—30-ական թթ. ղեկավարել է անչափահաս իրավախախտների աշխատանքային գաղութը (Պոլտավայի մոտ) և Ֆ. Է. Ձերժինսկու անվ. մանկական աշխատանքային կոմունան (Խարկովի արվարձանում): Մ. խնամքից զուրկ, իրավախախտ երեխաների մասսայական վերադաստիարակման մանկավարժական


Ա. Ս. Մակարենկո

պրակտիկայում անօրինակ փորձ է կատարել: 1937-ին տեղափոխվել է Մոսկվա, նվիրվել գրական և հասարակական-մանկավարժական գործունեության: Մեծ ներդրում ունի *կոմունիստական դաստիարակության* տեսական և գործնական հարցերում. ցույց է տվել նպատակասլաց դաստիարակության ներգործության լայն հնարավորությունները: Ըստ Մ-ի *մանկավարժությունը* պետք է սովորեցնի, թե ինչպես դաստիարակել նոր հասարակարգի մարդուն: Մանկավարժական որևէ միջոց չի կարող հայտարարվել մշտապես օգտակար և միևնույն արդյունավետությամբ ներգործող: Դաստիարակության միջոցների ոչ մի համակարգ չի կարող հաստատվել ընդմիշտ: Մ. կարևորել է կոլեկտիվի դերը անձի դաստիարակության և ձևավորման գործում: Իր մանկավարժական փորձի էությունը Մ. բնորոշել է՝ «որքան կարելի է մեծ պահանջկոտություն մարդու նկատմամբ և որքան կարելի է մեծ հարգանք նրա նկատմամբ» սկզբունքով: Մ. աշխատել է «մարդու մեջ մշակել լավագույնը», ձգտել է անհատի մեջ նախ և առաջ տեսնել դրական հատկություններ ու հակումներ: Մ. դաստիարակից պահանջել է գաղափարա-բարոյական և մասնագիտական բարձր մակարդակ, անհրաժեշտ է համարել սաների սիստեմատիկ բարոյա-քաղաքական լուսավորումը, կարևոր տեղ է հատկացրել ընտանեկան դաստիարակությանը: Մ. շատ ավելի հեշտ էր համարում երեխային ճիշտ և նորմալ դաստիարակելը, քան նրան վերադաստիարակելը: Մ-ի մանկավարժական փորձը և հայացքներն իրենց արտացոլումն են գտել նրա գեղարվեստական ստեղծագործություններում [«Մանկավարժական պոեմ» (հայ. հրտ. 1947), «30-ականի երթը», «Դրոշակներն աշտարակների վրա» (հայ. հրտ. 1959)], գեղարվեստական-տեսական [«Գիրք ծնողների համար» (հայ. հրտ. 1953)], հրապարակախոսական հոդվածներում («Կոմունիստական բարոյագիտության մասին», «Կոմունիստական դաստիարակություն և վարք» ևն): Որպես գրող և մանկավարժ Մ. ձևավորվել է Մ. Գորկու ստեղծագործությունների և նրա անմիջական ազդեցության տակ: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով: ՌւՍՍՀ-ում 1958-ին սահմանվել է Մ-ի մեդալ, որով պարգևատրվում են առավել աչքի ընկնող ուսուցիչներն ու ժողկրթության բնագավառի աշխատողները:

*Երկ.* Մանկավարժական ընտ. երկ., Ե., 1950: Соч., т. 1—7, 2 изд., М., 1957—58; Собр. соч., т. 1—5, М., 1971.

*Գրկ.* Սահակյան Մ. Հ., Ա. Ս. Մակարենկոյի մանկավարժական հայացքները, Ե., 1944: Горький М., По Союзу Советов, Собр. соч., т. 17, М., 1952; Балабанович Е. З., Антон Семенович Макаренко. Человек и писатель, М., 1963; А. С. Макаренко, 1888—1963, Сб., М., 1963; Русские советские писатели-прозаики, Биобиблиографич. указатель, т. 3, Л., 1964.

**ՄԱԿԱՐԹՈՒՐ** (MacArthur) Դուգլաս (1880—1964), ամերիկյան զինվորական գործիչ, բանակի գեներալ (1944): Ավարտել է Ուեստ-Փոյնթի ռազմ. ակադեմիան (1903): 1935—37-ին՝ զինվորական խորհրդական Ֆիլիպիններում, 1936—37-ին՝ Ֆիլիպինյան ֆելդմարշալ: 1941-ին նշանակվել է Հեռավոր Արևելքում ամեր. զինված ուժերի հրամանատար, 1942—51-ին՝ Խաղաղ օվկիանոսի հվ-արև. մասի դաշնակցային զորքերի գլխավոր հրամանատար, 1945—51-ին՝ օկուպացիոն զորքերի հրամանատար Ճապոնիայում: 1950—1951-ին ղեկավարել է ԿԺԴՀ-ի դեմ ագրեսիվ պատերազմի ռազմ. գործողությունները, որոնց ձախողումից հետո հեռացվել է հրամանատարական բոլոր պաշտոններից: 1952-ից աշխատել է մեծ բիզնեսի ասպարեզում:

**ՄԱԿԱՐԻՈՍ III** (Μακάριος), Միքայել Խրիստոդուլոս Մուսկոս (1913—1977), Կիպրոսի պետական, քաղաքական և կրոնական գործիչ: Ստացել է բարձրագույն աստվածաբանական կրթություն Աթենքում (1938—43): Հունաստանում պայքարել է գերմ. օկուպանտների դեմ: 1946—48-ին սովորել է Բոստոնի համալսարանի աստվածաբանության ֆակուլտետում: 1950-ի հունվարին գլխավորել է Կիպրոսում տեղի ունեցած հանրաքվեն, որի ընթացքում հույներն արտահայտվեցին էնոզիսի՝ Հունաստանի հետ վերամիավորման օգտին: 1950-ի հոկտեմբերին ժող. քվեարկությամբ ընտրվել է արքեպիսկոպոս և էթնարխիս (ժողովրդի առաջնորդ)՝ հուն. համայնքի խորհրդի նախագահ: 1956-ին անգլ. իշխանությունները Մ-ին ձերբակալել և աքսորել են Սեյշելյան կղզիներ: Ազատվել է 1957-ին: 1959-ին մասնակցել է Կիպրոսի հարցին նվիրված հույն—թուրք—անգլ. կոնֆերանսներին Ցյուրիխում և Լոնդոնում: 1959-ի դեկտեմբերին ընտրվել է Կիպրոսի պրեզիդենտ: Գլխավորել է կառավարող «Հայրենական ճակատ» կուսակցությունը: Մ. III հանդես է եկել Կիպրոսի հանրապետության անկախության, տերիտորիալ ամբողջականության, ՄԱԿ-ի որոշումների համաձայն Կիպրոսի հարցի լուծման օգտին: *Ռ. Կոնդակչյան*

**ՄԱԿԱՐՅԱՆ** Անուշավան Մակարի [1910, գ. Սարուխան (այժմ՝ ՀՍՍՀ Կամոյի շրջանում)—1973, Երևան], հայ սովետական գրականագետ: Բան. գիտ. դ-ր (1968): ՍՄԿԿ անդամ 1942-ից: Զբաղվել է Մ. Նալբանդյանի ստեղծագործության ուսումնասիրությամբ («Մ. Նալբանդյանը և արևմտահայ դեմոկրատիան», 1946, «Մ. Նալբանդյանի պոեզիան», 1957, «Մ. Նալբանդյանը գրող», 1968): Հրատարակել է նաև «Երգիծական ստեղծագործություն» (1957), «Երվանդ Օտյան» (1965) և այլ աշխատություններ:

**ՄԱԿԱՐՈՆԵՂԵՆ**, ցորենի ալյուրից ջրով հունցած և չորացրած խմորից պատրաստված արտադրանք: Ըստ ձևի և չափերի Մ. բաժանվում է հետևյալ տեսակների. մակարոն, եղջյուրիկներ ու փետուրներ, վերմիշել, լապշա, ձևավոր արտադրանք՝ ականջիկներ, խխունջիկներ, աստղիկներ, պատիճիկներ, օղակներ: Մ-ի մի ընդարձակ խումբ են կազմում մակարոնի տեսակները՝ առնվազն 15 *սմ* երկարությամբ և 1,5 *մմ*-ից ոչ ավելի պատերի հաստությամբ խողովակաձև արտադրանքը: Մ-ի պատրաստման համար օգտագործվում է սպիտակուցներով հարուստ, բարձրորակ ալյուր: Լավագույն հումքը ցորենի կոշտ սորտերից ստացված ալյուրն է: Մ-ի հիմնական արժանիքներն են՝ երկարատև պահելու հնարավորությունը (առանց սննդային ու համային հատկությունները կորցնելու), բարձր սննդարարությունը, պատրաստման դյուրությունը և համային լավ հատկությունները:

**ՄԱԿԱՐՈՎ** Ստեպան Օսիպովիչ (1848—1904), ռուս նավատորմավար, օվկիանոսագետ, բևեռախույզ, նավաշինարար, դերծովակալ (1896): Ծառայել է Խաղաղօվկիանոսյան, Բալթիական և Սևծովյան նավատորմերում: Մ-ի նախագծով ստեղծված առաջին ականակիր նավերն ու տորպեդավոր կատերները օգտագործվել են


Ս. Օ. Մակարով

1877—78-ի ռուս-թուրքական պատերազմի ժամանակ: 1881-ին ջրաբանական հետազոտություններ է կատարել Բոսֆորի նեղուցում: 1886—89-ին [«Վիտյազ» կորվետով (հետախուզական ռազմանավ)] և 1894—96-ին կատարել է շուրջերկրյա գիտահետազոտական ճանապարհորդություններ: Իր նախագծով և ղեկավարությամբ կառուցված «Երմակ» հզոր սառցահատով ձեռնարկել է մի շարք բևեռախուզական արշավանքներ: 1904—05-ի ռուս-ճապոնական պատերազմի ժամանակ նշանակվել է Խաղաղօվկիանոսյան նավատորմիկի հրամանատար: Զոհվել է Պորտ-Արթուրի պաշտպանության ժամանակ:

*Երկ.* Океанографические работы, М., 1950.

*Գրկ.* Крылов А. Н., Вице-адмирал Макаров, М., 1944.

**ՄԱԿԱՐՈՎ** Օլեգ Գրիգորևիչ [ծն. 6.1.1933, Ուդոմլյա ավան (Կալինինի մարզում)], ՍՍՀՄ տիեզերագնաց-օդաչու, Սովետական Միության կրկնակի հերոս (2.10. 1973, 16.3.1978): ՍՄԿԿ անդամ 1961-ից: Ավարտել է Մոսկվայի Բաումանի անվ. բարձրագույն տեխ. ուսումնարանը: ՍՍՀՄ տիեզերագնացների ջոկատում է 1966-ից: 1973-ի սեպտ. 27—29-ը, Վ. Գ. *Լազարևի* հետ, որպես բորտ-ինժեներ, թռիչք է կատարել «Սոյուզ-12» տիեզերանավով: 47 *ժ* 16 *ր*-ում տիեզերանավը Երկրի շուրջը կատարել է 32 պտույտ: 1975-ի ապրիլի



Օ. Գ. Մակարով

5-ին, Վ. Գ. Լազարևի հետ թռիչք է կատարել «Սոյուզ» տիեզերանավով, սակայն թռիչքն ընդհատվել է կրող հրթիռի շարժման պարամետրերի շեղման պատճառով: 1978-ի հունվ. 10—16-ը, Վ. Ա. *Ջանիբեկովի* հետ, որպես բորտ-ինժեներ, թռիչք է կատարել «Սոյուզ-27» տիեզերանավով և «Սոյուզ-26» (տիեզերագնացներ Յու. Վ. *Ռոմանենկո*, Գ. Մ. *Գրեչկո*) տիեզերանավին կցված «Սալյուտ-6» ուղեծրակայանով: Վայրէջք է կատարել «Սոյուզ-26» տիեզերանավով: 1980-ի նոյեմբ. 27-ին Լ. Դ. Կիզիմի և Գ. Մ. *Ստրեկալովի* հետ, որպես բորտ-ինժեներ, թռիչք է կատարել «Սոյուզ-Տ-3» տիեզերանավով: Նոյեմբ. 28-ին տիեզերանավը կցվել է «Սալյուտ-6» ուղեծրակայանին, և համատեղ թռիչքը շարունակվել է մինչև դեկտ. 10-ը: Մ. Լ. Կիզիմի և Գ. Ստրեկալովի հետ վայրէջք է կատարել «Սոյուզ-Տ-3» տիեզերանավով՝ 1980-ի դեկտ. 10-ին: Պարգևատրվել է Լենինի 2 շքանշանով:

**ՄԱԿԱՐՈՎԱ** Տամարա Ֆեոդորովնա (ծն. 1907, Պետերբուրգ), ռուս սովետական կինոդերասանուհի: ՍՍՀՄ ժող. արտիստուհի (1950): ՍՄԿԿ անդամ 1943-ից: 1930-ին ավարտել է Լենինգրադի բեմական արվեստի ինստ-ը: 1944-ից դասավանդում է Համամիութենական պետական կինեմատոգրաֆիայի ինստ-ում (պրոֆեսոր՝ 1968-ից): 1934-ից հիմնականում հանդես է եկել Ս. Ա. *Գերասիմովի* ֆիլմերում: Ստեղծել է մեղմ կանացիությամբ, ջերմ հոգով օժտված ռուս. ազգային բնավորություններ: Լավագույն դերերից են՝ Նատաշա («Կոմսոմոլսկ», 1938), Ագրաֆենա («Ուսուցիչը», 1939), Նինա («Դիմակահանդես», 1941), Պանինա («Ժուռնալիստը», 1967), Պետրուշկովա («Սիրել մարդուն», 1972): Արժանացել է ՍՍՀՄ պետ. մրցանակների (1941, 1947):

**ՄԱԿԱՐՏԻ** (McCarthy) Ջոզեֆ Ռայմոնդ (1908—1957), ամերիկյան քաղաքական գործիչ: 1946—57-ին սենատոր (հանրապետական) Վիսկոնսին նահանգից: Մ-ի անվան հետ է կապված 1950-ական թթ. սկզբի ԱՄՆ-ի քաղ. կյանքի խիստ հետադիմական հոսանքը՝ մակարտիզմը: Որպես սենատական հանձնաժողովի նախագահ, հանդես է եկել հօգուտ «սառը պատերազմի» ուժեղացման, հակադեմոկրատական և հակաբանվորական օրենքների ընդունման, բորբոքել հակակոմունիստական հիստերիա:

**ՄԱԿԲԱՅ**, *խոսքի մաս*, որը ցույց է տալիս առարկայի հատկանիշի հատկանիշը: Նյութական իմաստ ունեցող խոսքի մասերից միակն է, որ չի թեքվում՝ չի ենթարկվում քերականական փոփոխության: Կան սակավաթիվ Մ-ներ, որ ունեն համեմատության աստիճան (արագ-ավելի արագ-ամենաարագ, ուշ-ավելի ուշ-ամենաուշ): Մ. դրվում է հատկանիշ արտահայտող բառերի, առավելապես՝ բայի (**միշտ** աշխատել, **բարոյապես** հաղթել), ինչպես նաև ածականի (**հազիվ** նկատելի, **արտաքուստ** գեղեցիկ), թվականի (**ընդամենը** հարյուր, **մոտավորապես** քսան), դերանվան (**համարյա** բոլոր, **գրեթե** նույնքան), բայանվան (**միանգամից** արգելակում, **լիովին** ոչնչացում) վրա: Ըստ իմաստի Մ-ները լինում են տեղի, ժամանակի, ձևի, չափի: Որոշ Մ-ների մեջ համատեղվում են մեկից ավելի իմաստներ, և այդ պատճառով դրանք կոչվում են ընդհանրական (**շարունակ, մերթ ընդ մերթ** Մ-ներն ունեն և՛ ժամանակի, և՛ ձևի, և՛ չափի իմաստ): Մ. չթեքվող խոսքի մասերից միակն է, որ հանդես է գալիս որպես նախադասության անդամ. գերազանցապես լինում է պարագա՝ տեղի (բարձրացան **վեր**), ժամանակի (**հիմա** կգան), ձևի (**արագ** հեռացավ), չափի (**բազմիցս** հայտնվել է), ստորոգելիական վերադիր (ընթացքն **արագ** էր), որոշիչ (**դանդաղ** ընթացք): Շատ Մ-ներ նախադասության անդամ են դառնում այլ բառի հետ կապակցված (**կրկնակի շքանշանակիր** զուռը, **մոտ հազար** գիրք): Որոշ Մ-ներ ինքնուրույնաբար կազմում են միակազմ նախադասություն (**Ուշ** է: **Շուտ** է): **Ավելի** Մ. հանդես է գալիս որպես ածականի բաղդատական աստիճանը կազմող ձևաբանական միջոց (**ավելի** լավ):

Կազմավորման ու կազմության տեսակետից Մ. ինքնատիպ խոսքի մաս է: Մի շարք արմատական Մ-ներ (դեռ, միշտ, վաղ) գալիս են հին հայերենից, շատ Մ-ներ առաջացել են քերականական ձևերի քարացումից (մասամբ, հազիվ, շուտով), շատերն էլ կազմվում են բառաբարդումով (բացեիբաց), առավել արդյունավետ է Մ-ների կազմության ածանցման միջոցը: Ժամանակակից հայերենի համեմատաբար գործուն մակբայակերտ ածանցներն են՝ (**ա**)**բար** (գիտակցաբար), (**ա**)**պես** (արմատապես, նյութապես), **որեն** (լայնորեն, տեսականորեն), **ովին** (լիովին, հիմնովին): Որոշ ածանցներ Մ-ների կազմությանը մասնակցում են երկրորդաբար՝ **ակի** (շեղակի), **անց** (սրտանց), **ովի** (յուրովի):

*Գրկ.* Աբրահամյան Ս. Գ., Չթեքվող խոսքի մասերը և նրանց բառական ու քերականական հատկանիշների փոխհարաբերությունը ժամանակակից հայերենում, Ե., 1965: Աբեղյան Մ., Երկ., հ. 6, Ե., 1974:

*Ս. Աբրահամյան*

**ՄԱԿԴԻՎԻԴ** (McDivitt) Ջեյմս (ծն. 1929), ԱՄՆ-ի տիեզերագնաց-օդաչու, ռազմաօդային ուժերի բրիգադային գեներալ: Ավարտել է Միչիգանի համալսարանը (1959), ռազմաօդային ուժերի փորձարկող օդաչուների դպրոցը (ռազմաօդային ուժերի Էդուարդս բազայում, 1966), աերոտիեզերական հետազոտությունների օդաչուների պատրաստման դպրոցը (1961): ԱՄՆ-ի տիեզերագնացների խմբում է 1962-ից: 1965-ի հունիսի 3—7-ը, Է. *Ուայթի* հետ, որպես հրամանատար, թռիչք է կատարել «Ջեմինի-4» տիեզերանավով: 1969-ի մարտի 3—13-ը, Դ. *Սկոտի* և Ռ. *Շվայկարթի* հետ, որպես հրամանատար, թռիչք է կատարել «Ապոլլոն-9» տիեզերանավով: Երկու թռիչքների ընթացքում տիեզերքում մնացել է 338 *ժ* 57 *ր*:

**ՄԱԿԴԻՐ**, էպիտետ, բանարվեստի և ոճաբանության հասկացություն: Գեղարվեստական խոսքի ամենատարածված արտահայտամիջոցներից, որն առանձնահատուկ ձևով բնորոշում է առարկան, երևույթը, գործողությունը [«լուսեղեն ճամփա» (Մ. Մեծարենց), «ողբանվագ, լացակումած լար» (Ե. Չարենց)]: Մ. գեղարվեստական պատկեր ստեղծելու գլխավոր միջոցներից է: Երբեմն Մ. կարող է խտացնել մի ամբողջ նկարագրություն [«մահախուճապ սերունդներ» (Ա. Իսահակյան)]:

*Դ. Գասպարյան*

**ՄԱԿԴՈՆԱԼԴ** (Macdonald) Ջեյմս Ռամսեյ (1866—1937), անգլիական պետական և քաղաքական գործիչ: Լեյբորիստական կուսակցության ղեկավարներից: 1924-ին և 1929—31-ին լեյբորիստական կառավարության պրեմիեր մինիստր: Նպաստել է, այսպես կոչված, *Դաուեսի պլանի* ընդունմանը: 1924-ին Մ-ի կառավարությունը դե յուրե ճանաչել է սովետական կառավարությունը, իսկ 1929-ին վերականգնել 1927-ին խզված դիվանագիտական հարաբերությունները: Մ-ի ժամանակ ըստ էության շարունակվել է պահպանողականների գաղութային քաղաքականությունը, ճնշվել է ազգային-ազատագրական շարժումը Հնդկաստանում, Իրաքում և այլ անգլ. գաղութներում:

**ՄԱԿԵԴՈՆԱԿԱՆ (ՀԱՅԿԱԿԱՆ) ԴԻՆԱՍՏԻԱ**, կայսերական դինաստիա Բյուզանդիայում 867—1056-ին: Հիմնադիրը Մակեդոնիա բանակաթեմում ծնված (այստեղից էլ՝ դինաստիայի անվանումը) հայազգի *Վասիլ I* էր: Դինաստիայի կայսրերի զգալի մասը խոչընդոտել է խոշոր հողատիրության զարգացումը, վարել մանր գյուղացիական հողատիրությունը պահպանելու քաղաքականություն (գյուղացիությունը հարկատու և բանակը համալրող հիմնական տարրն էր): Բյուզանդական բանակը արաբներից վերագրավել է զգալի տարածքները, կայսրությանն է ենթարկել Բուլղարիան: Բանակում վճռական դեր է խաղացել հայ իշխանների զորքը, աչքի են ընկել հայազգի զորավարներ Մելիասը (Մլեհ Մեծ), Հովհաննես և Թեոփիլոս Կուրկուասները և ուրիշներ: Դինաստիայի կառավարման ժամանակաշրջանում Բյուզանդիան, Հուստինիանոս I-ից հետո, վերստին հասավ իր հզորության գագաթնակետին: Հայաստանը դիտելով իբրև արաբներին հակազդող ուժ, սկզբնական ժամանակաշրջանում վարել են հայերի հետ դաշնակցելու քաղաքականություն (893-ին կնքվել է առևտրական պայմանագիր, 973 կամ 974-ին՝ հաշտություն են): Հետագայում՝ մասնավորապես Վասիլ II-ի և Կոստանդին IX Մոնոմախոսի ժամանակ, երբ խալիֆայությունը թուլացել էր, և Հայաստանի նշանակությունը ընկել, ստտիճանաբար զավթել են Բագրատունյաց Հայաստանի հողերը, իսկ 1045-ին վերացրել թագավորությունը:

Դինաստիայի կայսրերը՝ Վասիլ I (867—886), Լևոն VI Իմաստուն (886—912), Ալեքսանդրոս (912—913),

Կոստանդին VII Ծիրանածին (913—959), Ռոմանոս I Լակապենոս (կայսերակից, 920—944), Ռոմանոս II (959—963), Նիկեփորոս II Փոկաս (963—969), Հովհաննես I Չմշկիկ (969—976), Վասիլ II Բուլղարասպան (976—1025), Կոստանդին VIII (1025—1028), Ռոմանոս III Արգիրոս (1020—1034), Միքայել IV Պափլագոնացի (1034—1041), Միքայել V Կալափատես (1041—1042), Զոե և Թեոդորա (1042), Կոստանդին IX Մոնոմախոս (1042—1055), Թեոդորա (կրկին, 1055—1056):

*Գրկ.* Հովհաննես Սկիլիցես, Ե., 1979 (Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին 10, Բյուզանդական աղբյուրներ 3): Գ ե լ ց ե ր Հ., Համառոտություն բյուզանդական կայսրների պատմության, Վաղ-պատ, 1901: Տ ե ր - Ս ա հ ա կ յ ա ն Կ., Հայ կայսերք Բյուզանդիոնի, հ. 1—2, Վնտ., 1905: История Византии, т. 2, М., 1967.

**ՄԱԿԵԴՈՆԱՑԻՆԵՐ**, 1. Հին Մակեդոնիայի բնակչությունը, 2. պատմական Մակեդոնիա երկրամասի՝ էթնիկական ծագմամբ տարբեր բնակիչների անվանումը, 3. հարավ-սլավոնական ազգ: Կազմում են Մակեդոնիայի Սոցիալիստական Հանրապետության [(ՄՍՀ) Հարավսլավիա] բնակչության մեծ մասը: Ընդհանուր թիվը Հարավսլավիայում 1194 հզ. է (1971), որից 1142 հզ. ՄՍՀ-ում: Խոսում են *մակեդոներեն*:

**ՄԱԿԵԴՈՆԵՐԵՆ**, *մակեդոնացիների* լեզուն: Պատկանում է հնդեվրոպական լեզվաընտանիքի արևելասլավոնական ճյուղի հվ. խմբին: Հիմնական բարբառախմբերըն են՝ արմ., արլ., հս.: Բարբառային տարբերակումները նկատի ունենալով՝ լեզվաբանական գրականության մեջ երբեմն գործածում են «մակեդոնական խոսվածքներ» անվանումը: Մ. Հարավսլավիայի հիմնական (պաշտոնական) լեզուներից մեկն է: Որպես գրական լեզու ձևավորվել է XX դարում: Ունի սլավոնագիր այբուբեն (կիրիլիցա): Հնչյունական կազմում առկա են 5 ձայնավոր, վանկարար ձայնորդ, կիսաշփական, միջնաքմային բաղաձայններ: Շեշտը շարժական-ուժային է (նախավերջընթեր՝ վերջից երրորդ վանկում): Կառուցվածքային տիպով հարում է վերլուծականին, ունի եռաշարք վերջադիր հոդեր, կոչականի հատուկ ձևեր: *Հ. Պետրոսյան*

**ՄԱԿԵԴՈՆԻԱ** Հ ի ն (հուն. Μακεδονία, լատ. Macedonia), պետություն Բալկանյան թերակղզում մ. թ. ա. V—II դարերում: Բնական պայմաններով Մ. բաժանված էր երկու մասի՝ Վերին (ընդարձակ, լեռնային, անտառապատ դժվարամատչելի մարզ, որտեղ բնակվել է մակեդոնացիների հիմնական մասը) և Ստորին (Եգեյան ծովին մոտեցող ոչ մեծ հարթավայր՝ Հալիակմոն և Աքսիոս գետերի ստորին հոսանքում): Լեռնային և սարահարթային շրջաններում զբաղվել են անասնապահությամբ, հովիտներում և մերձափնյա շրջաններում՝ երկրագործությամբ: Տարածված էր անտառամշակությունը: Մակեդոնացիների ծագման վերաբերյալ միասնական կարծիք չկա: Սովետական պատմագրության մեջ ընդունված է, որ մակեդոնական ցեղերը կազմավորվել են ստորին Դանուբի վաղ նոր քարի դարի բնակիչների և թրակիական, իլլիրիական,



Փիլիպոս V-ի դիմանկարը (ձախից), հռոմեական ժամանակաշրջանի մակեդոնական դրամ (աջից)

հուն. էթնիկական տարրերի ձուլումից: Մակեդոնացիները հասարակական զարգացմամբ ետ էին մնացել Հին Հունաստանի զարգացած շրջանների բնակիչներից: Մ. թ. ա. VI դ. վերջին —V դ. սկզբին Ստորին Մ-ում արդեն կազմավորվել է վաղ դասակարգային հասարակություն: V դ. Արգեյանների դինաստիայի օրոք սկսվել է Մ-ի միավորումը: Ալեքսանդր I թագավորի (մ. թ. ա. 495—450) օրոք միավորվել է ամբողջ Ստորին Մ.: Աթենական 1-ին ծովային միության ստեղծումից (մ. թ. ա. 478) հետո Մ-ի և Հունաստանի հարաբերությունները սրվել են Եգեյան ծովի հս. ափին ամրանալու Մ-ի ձգտման պատճառով: Արքելաոս թագավորի (մ. թ. ա. մոտ 413—399) ռեֆորմները (ռազմ., դրամական ևն) նպաստել են Մ-ի միավորմանը, տնտ. ու քաղ. զարգացմանը: Նրա օրոք մայրաքաղաքը Էգեից (Եդեսա) տեղափոխվել է Պելլա: Արքելաոսի մահից հետո սկսվել է երկպառակտչական պայքար: Մ. թ. ա. 359-ին գահ է բարձրացել Փիլիպոս II (մ. թ. ա. 359—336, տես *Փիլիպոս II Մակեդոնացի*), որի անցկացրած ռազմ., վարչական, ֆինանսական ռեֆորմները նպաստել են պետության կենտրոնացմանը: Փիլիպոս II օգտվելով հուն. պոլիսների սոցիալ-տնտեսական սուր ճգնաժամից՝ մ. թ. ա. 359—338-ին նվաճել է Պեոնիան, Թեսալիան, Փոկիսը, Քաղկիդիկեն, Թրակիան: Մ. թ. ա. 338-ին Քերոնեայի ճակատամարտում հաղթելով հուն. պոլիսների միացյալ ուժերին, Փիլիպոս II Մ-ի ազդեցությանն է ենթարկել ամբողջ Հունաստանը: Փիլիպոս II-ի որդին՝ *Ալեքսանդր Մակեդոնացին* (մ. թ. ա. 336—323), մ. թ. ա. 334—330-ի ընթացքում նվաճել է Պարսկաստանը, կործանել Աքեմենյանների դինաստիան, մ. թ. ա. 329-ին արշավել Միջին Ասիա, մ. թ. ա. 327-ին՝ Արևմտյան Հնդկաստան, ստեղծել հսկայական տերություն, որը տարածված էր Բալկանյան թերակղզուց մինչև Հնդկաստան: Ալեքսանդր Մակեդոնացու մահից հետո նրա տերությունը տրոհվել է: Մ-ում իշխանության համար պայքարում հաղթել է Անտիգոնյանների դինաստիան, որն իշխել է մ. թ. ա. 306—168-ին: Մ. թ. ա. IV դ. վերջի —III դ. սկզբի սոցիալ-տնտեսական ճգնաժամն ուժեղացել է *դիադոքոսների* պայքարի և գաղատների արշավանքի (մ. թ. ա. 279) հետևանքով: Միևնույն ժամանակ հուն. պոլիսները պայքարում էին իրենց անկախությունը վերականգնելու համար: Մ. թ. ա. 220-ին Մ-ի թագավոր Փիլիպոս V (մ. թ. ա. 221—179), ձգտելով վերահաստատել Մ-ի ազդեցությունն ամբողջ Հունաստանի վրա, պատերազմ սկսեց Էտոլիական միության դեմ, սակայն Հռոմի դեմ պատերազմի նախապատրաստվելու համար ստիպված մ. թ. ա. 217-ին հաշտություն կնքեց: Իլլիրիայում և Ադրիատիկ ծովում հաստատվելու համար սրվեցին հարաբերությունները Մ-ի և Հռոմի միջև: Մ. թ. ա. 215-ին



Փիլիպոս V դաշինք կնքեց Հաննիբալի հետ և պատերազմ հայտարարեց Հռոմին: Մակեդոնական երեք պատերազմների (մ. թ. ա. 215—205, 200—197, 171—168) հետևանքով Մ. պարտվեց, տնտեսապես և քաղաքականապես թուլացավ, բաժանվեց 4 շրջանի: Մ. թ. ա. 148-ին Մ-ում առաջացած հակահռոմեական ապստամբության ճնշումից հետո Մ. դարձավ հռոմ. պրովինցիա:

Գրկ. Ранович А. Б., Эллинизм и его историческая роль, М.—Л., 1950; Шофман А. С., История античной Македонии, ч. 1—2, Казань, 1960—63.

**ՄԱԿԵԴՈՆԻԱ**, պատմական մարզ Բալկանյան թերակղզու կենտրոնական մասում: Պատմականորեն հայտնի առաջին բնակիչները իլլիրիական և թրակիական ցեղերն էին: Մ. թ. ա. V դ. Մ-ի տարածքում առաջացել է պետություն (տես *Մակեդոնիա* Հին): Մ. թ. VI—VII դդ. Մ-ում բնակություն են հաստատել սլավոն. ցեղեր, որոնք ստեղծել են ցեղային իշխանություններ: 670—675-ին Մ. են ներխուժել նախաբուլղարները: IX դ. 2-րդ քառորդին Մ-ի մեծ մասը մտել է Բուլղարական առաջին թագավորության կազմի մեջ: IX—X դդ. Մ-ի տարածքում ձևավորվել են ֆեոդալական հարաբերությունները, տարածվել է քրիստոնեությունը: X դ. Մ-ում ծավալվել է բոգոմիլների հակաֆեոդալական շարժումը: X—XIV դդ. ընթացքում գտնվել է Արևմտա-Բուլղարական թագավորության, Բյուզանդիայի, Բուլղարական երկրորդ թագավորության, Սերբիայի կազմում: Հաճախակի պատերազմները, խաչակիրների և այլ նվաճողների արշավանքները, էթնիկական տարբեր խմբերի (հույներ, բուլղարներ, սերբեր, ալբանացիներ, վլախներ, հայեր, հրեաներ ևն) տեղաշարժերը Մ-ի տարածքում ստեղծել են բարդ էթնիկական միջավայր: XIV դ. վերջին Մ. զավթեցին թուրքերը: Ուժեղացավ ալբանացիների և թուրքերի ներհոսքը Մ.: Թուրք ֆեոդալների լուծը, բռնի մահմեդականացումը առաջ բերեցին հակաֆեոդալական և հակաթուրքական շարժումներ (հայդուկների, կլեֆտների՝ հույն գյուղացի պարտիզանների), որոնք ուժեղացան XVIII դ. վերջին, երբ սաղմնավորվում էին կապիտալիստական հարաբերությունները: 1821—29-ի հույն. ազգային-ազատագրական հեղափոխությունը ներգրավեց նաև Մ-ի հույն բնակչությանը: Ազատագրական շարժումն ուժեղացավ նաև սլավոն., հիմնականում՝ բուլղար բնակչության մեջ: 1903-ին Մ-ում բռնկվեց ազգային-ազատագրական ապստամբություն, որը դաժանորեն ճնշեցին թուրք. զորքերը: XX դ. սկզբին Բալկանյան թերակղզու համար եվրոպական տերությունների (հատկապես Գերմանիա, Ավստրո-Հունգարիա) պայքարի սրման պայմաններում Մ. դարձավ միջազգային հակասությունների հանգուցակետերից մեկը: Մ-ի համար սրվեց պայքարը նաև բալկանյան երկրների միջև: Բալկանյան պատերազմների հետևանքով (տես *Բալկանյան պատերազմներ 1912—1913*) Մ. բաժանվեց Սերբիայի (Վարդարյան Մ.), Հունաստանի (Եգեյան Մ.) և Բուլղարիայի (Պիրինյան երկրամաս) միջև:

**ՄԱԿԵԴՈՆԻԱ** (Македонија), Մակեդոնիայի Սոցիալիստական Հանրապետություն (ՄՍՀ, Социјалистичка Република Македонија), հանրապետություն Հարավսլավիայի (ՀՍՖՀ) կազմում, երկրի հարավ-արևելյան մասում, Վարդար գետի ավազանում: Տարածությունը 25,7 հզ. *կմ*² է, բնակչությունը՝ 1836 հզ. (1978): Մայրաքաղաքը՝ Սկոպյե:

**Բնությունը**: Տարածքի մեծ մասը կտրտված լանջերով միջին բարձրության լեռներ են: Կազմված է բյուրեղային թերթաքարերից, դոլոմիտներից, կրաքարերից: Տեղ-տեղ զարգացած են ռելիեֆի կարստային ձևերը: Իջվածքներն զբաղեցված են լճերով (Օխրիդյան, Պրեսպա) կամ գետահովիտներով: Հաճախակի են երկրաշարժերը (1963-ի երկրաշարժի հետևանքով ավերվեց Սկոպյե քաղաքը): Կան մագնետիտի, երկաթի, կապար-ցինկի հանքավայրեր: Կլիման միջերկրածովյան է: Հովիտները մշակված են, լեռնալանջերը (մինչև 2000 *մ* բարձրությամբ) ծածկված են խառն անտառներով ու թփուտներով, ավելի բարձր տափաստանացված լեռնամարգագետիններ են:

**Պատմական ակնարկ**: ՄՍՀ ստեղծվել է Վարդարյան Մակեդոնիայի (տես *Մակեդոնիա*, պատմական մարզ) տարածքում, որը 1918-ին Սերբիայի կազմում մտել է Սերբերի, հորվաթների և սլովենների թագավորության (1929-ից՝ Հարավսլավիա) մեջ: Սերբական բուրժուազիան Մ-ում վարում էր տնտ. և ազգային ճնշման քաղաքականություն, որի դեմ դիմադրությունը նպաստեց մակեդոնական ազգային հանրության ձևավորմանը: 1941-ի ապրիլին Մ-ի տարածքը օկուպացրեցին միապետական Բուլղարիան և ֆաշիստական Իտալիան: 1941-ի հոկտեմբերին Մ-ում սկսվեց ազատագրական զինված պայքար, որը համահարավսլավական ժողովրդական-ազատագրական պայքարի բաղկացուցիչ մասն էր: Հարավսլավիայի ժողովրդա-ազատագրական բանակի զորամասերը և Բուլղարիայի հայրենական ճակատի զորքերը 1944-ի նոյեմբերին Մ. ազատագրեցին ֆաշիստական զավթիչներից: 1945-ի ապրիլին կազմվեց Մ-ի առաջին ժող. կառավարությունը: 1945-ի նոյեմբերին հռչակվեց Հարավսլավիայի Ֆեդերատիվ Ժողովրդական Հանրապետությունը (ՀՖԺՀ), որի վեց ժող. հանրապետություններից մեկը Մ-ի Ժողովրդական Հանրապետությունն (ՄԺՀ) էր: Հարավսլավիայի և Մ-ի՝ 1963-ին ընդունված սահմանադրություններով Մ. Սոցիալիստական Հանրապետություն է Հարավսլավիայի Սոցիալիստական Ֆեդերատիվ Հանրապետության (ՀՍՖՀ) կազմում:

Ետպատերազմյան տարիներին Մ-ում իրականացվեցին արմատական վերափոխումներ: Ագրարային ռեֆորմով (1945) վերացվեց խոշոր հողատիրությունը, ազգայնացվեցին արդյունաբերությունը, առևտուրը, տրանսպորտը, բանկերը: Կառուցվեցին նոր արդ. ձեռնարկություններ, ստեղծվեցին արդ. նոր ճյուղեր (սև և գունավոր մետալուրգիա, քիմիական ևն): Սոցիալիստական շինարարության ընթացքում սկսվեց մակեդոնական ազգի ձևավորման և զարգացման նոր փուլը, ձևավորվեց մակեդոնական ազգային սոցիալիստական մշակույթը: Մ-ի սոցիալիստական զարգացման կարևոր գործոններն են աշխատավորների հասարակական-քաղաքական ակտիվությունը, Հարավսլավիայի կոմունիստների միության և նրա բաղկացուցիչ մասը կազմող Մ-ի կոմունիստների միության գործունեությունը (տես նաև *Հարավսլավիա*, Պատմական ակնարկ մասը):

**Տնտեսությունը**: Սոցիալիստական շինարարության տարիներին Մ. ագրարային հետամնաց մարզից վերածվել է արդյունաբերության նշանակալի տեսակարար կշիռ ունեցող հանրապետության: Առաջատար են թեթև, սննդի և ծխախոտի արդյունաբերության ճյուղերը: Զարգանում է կոշիկի-կաշվի, փայտամշակման արդյունաբերությունը: Կարևոր տեղ են զբավում լեռնահանքային, քիմ. արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան: Արտադրվում են հաստոցներ, արդ. սարքավորումներ ու գործիքներ, էլեկտրասարքեր, գյուղատնտ. մեքենաներ, պոլիմերներ, շինանյութեր, ապակի ու ճենապակի:

Գյուղատնտեսությունը մեքենայացվում է: Մշակում են ցորեն, եգիպտացորեն, բրինձ, ծխախոտ, բամբակ, բանջարեղեն: Զբաղվում են նաև այգեգործությամբ, պտղաբուծությամբ, մսաբրդատու անասնապահությամբ, թռչնաբուծությամբ և ձկնորսությամբ: Տնտեսության կարևոր ճյուղերից է տուրիզմը:

**Կուլտուրական շինարարությունը և առողջապահությունը**: Դպրոցները հիմնականում 8-ամյա են: Լրիվ միջնակարգ կրթություն են տալիս գիմնազիաները: Գործում են նաև որակյալ բանվորների պատրաստման, գյուղատնտ., տեխ. և այլ մասնագիտական, ինչպես նաև մեծահասակների կրթության դպրոցներ: Բարձրագույն կրթության համակարգը կազմում են համալսարանը (հիմնադրվել է 1949-ին, Սկոպյե) և այլ բարձրագույն ուս. հաստատություններ:

Գործում են ազգային պատմության, բանահյուսության, տնտեսագիտության, հիդրոկենսաբանության, երկրաբանության ինստ-ները, ֆիզիկոսների և մաթեմատիկոսների, աշխարհագետների ևն ընկերություններ: 1967-ին ստեղծվել է Գիտությունների և արվեստների Մակեդոնական ակադեմիան:

ՄՍՀ-ում հրատարակվում է ավելի քան 125 թերթ ու հանդես: Կենտրոնական տպագիր օրգանը «Նովա Մակեդոնիա» («Нова Македонија», 1944-ից) օրաթերթն է: Ռադիոհաղորդումները (մակեդոներեն) տրվում են 1944-ից, հեռուստահաղորդումները՝ 1964-ից:

1971-ին Մ-ում գործում էր ընդհանուր տիպի 16 կլինիկա և հիվանդանոց, 28 այլ բժշկ. մշտական հիմնարկներ՝ 9 հզ. մահճակալով (շուրջ 500 բժիշկ), ավելի քան 1000 պոլիկլինիկա, ամբուլատորիա, դիսպանսեր, կոնսուլտացիա և բժշկ. կետ (ավելի քան 600 բժիշկ, 400 ստոմատոլոգ և ատամնաբույժ): ՄՍՀ-ում կան մի շարք առողջարաններ, տուրիստական կենտրոններ:

**Գրականությունը**: Մակեդոներեն բանաստեղծությունների առաջին գրքի հեղինակը Կոչո Ռացինն է (1908—43): 1930-ական թթ. էական դեր խաղացին նաև Կ. Նեդելկովսկին և ուրիշներ, որոնց ստեղծագործությունը սերտորեն կապված էր հեղափոխական և ժող.-հայրենասիրական ավանդույթների հետ: Դրամատուրգիայում ռեալիստական միտումների հաստատմանը նպաստեցին Վ. Իլիոսկին, Ա. Պանովը, Ռ. Կրլեն և այլք: Ետպատերազմյան տասնամյակներին կազմավորվեցին արդի գրական մակեդոներենի նորմաները, սկսեցին հրատարակվել մակեդոնական գրական հանդեսներ, երևան եկան ստեղծագործական կազմակերպություններ: Սկզբնական տարիներին առաջատար էր պոեզիան (Ս. Յաննսկի, Բ. Կոնեսկի, Ա. Շոպով, Լ. Կարովսկի), ձևի և բովանդակության հետաքրքիր որոնումներով աչքի ընկան Ա. Պոպովսկին, Ռ. Պավլովսկին և այլ բանաստեղծներ: 1950-ական թթ. սկզբներից զգացվեց մոդեռնիստական միտումների ազդեցությունը պոեզիայում (Ջ. Յովանովիչ, Վ. Ուրոշևիչ, Բ. Գյուզել): Պատմվածքի ժանրում հայտնի դարձան Յո. Բոշկովսկու, Գ. Աբաջիևի, Ժ. Չինգոյի և այլոց անունները: 1950—70-ական թթ. արմատավորվեցին վեպն ու վիպակը, որոնք նոր ժանրեր էին մակեդոնական գրականության համար: Դրանք արտացոլեցին ֆաշիզմի դեմ մղված ժող.-ազատագրական պայքարը, ժող. իշխանության հաստատումից հետո տեղի ունեցած փոփոխությունները (Ս. Յանևսկու, Յո. Լեոդի, Ս. Պոպովի, Ս. Դրակուլի վեպերը): Այս շրջանի մակեդոնական գրականության համար բնորոշ է գաղափարա-գեղագիտական և գեղարվեստական բազմատեսակ ուղղությունների պայքարը:

**Ճարտարապետությունը և կերպարվեստը**: Մ-ի տարածքում պահպանվել են մինչև IV—VI դդ. քաղաքների (Ստոբի, Սկուպի, Հերակլեի) ավերակներ: Միջնադարյան ճարտ. ձևավորվել է բյուզանդական ճարտ-յան ազդեցությամբ: Մինչև թուրք. նվաճումները աշխարհիկ շինարվեստը ներկայանում է Սկոպյեի կիկլոպյան պարիսպների (535), Սամուիլ թագավորի դղյակի (XI դ. սկիզբ), Ստրումիցայի ամրոցի (XI դ.) մնացորդներով: Եկեղեցական ճարտ-յան վաղ շրջանի տիպ է գմբեթավոր եռանավ բազիլիկը (Ս. Սոֆիայի բազիլիկը Օխրիդում, մոտ 1037—1050): XII—XIV դդ. հաստատուն տեղ է գրավել մեկ (Լեսնովոյի Ս. Միքայելի և Գաբրիելի եկեղեցին, 1341) կամ հինգ (Ներեզիի Ս. Պանտելեյմոնի եկեղեցին, 1164) գմբեթով խաչաձև-գմբեթավոր տաճարի տիպը: XIII դ. վերջից կառույցների ճակատները հաճախ զարդարվում էին քարե և աղյուսե նախշավոր շարվածքով: Թուրք. տիրապետության շրջանում քաղաքներում կառուցվել են մզկիթներ, մինարեթներ, իջևանատներ, բաղնիքներ, աշտարակաձև բնակարաններ: XVIII—XIX դդ. կառուցվել են մենաստանների համալիրներ, տարբեր տիպի ժող. տներ: Միջնադարյան կերպարվեստում գերակշռում են որմնանկարները (Օխրիդի Ս. Սոֆիայի տաճարի, XI դ., Ս. Կղեմենի եկեղեցու, 1295-ից հետո, Ներեզիի Ս. Պանտելեյմոնի եկեղեցու, 1164, Ստարո-Նագորիչինոյի Ս. Գևորգ եկեղեցու, 1317—18, որմնանկարաշարերը), որոնք կարևոր տեղ են գրավում XI—XIV դդ. արևելաեվրոպական գեղանկարչության պատմության մեջ և, աղերսվելով բյուզանդական որմնանկարչությանը, ունեն նաև տեղական առանձնահատկություններ: Կերպարների կոպիտ արտահայտչականությունն ու կատարման մեծ ինքնուրույնությունն են բնորոշ Լեսնովոյի Ս. Միքայելի և Գաբրիելի (մոտ 1349) և Մատեյչեի Աստվածամոր (մոտ 1355) եկեղեցիների որմնանկարներին: Թուրք. տիրապետության շրջանում արվեստի զարգացումը դանդաղել է: XVIII դ. 2-րդ կեսից գեղանկարչությունը կրել է Արևմուտքի և Ռուսաստանի գեղարվեստական կենտրոնների ազդեցությունը (Ֆրչկովսկիների ընտանիք), XVIII դ. վերջ —XX դ., Ջ. Զոգրաֆսկի և Դ. Անդոնով, XIX դ. վերջ —XX դ. 1-ին կես): Վառ ֆոլկլորային բնույթի է XII—XIV դդ. փայտի քանդակազարդումը. XVII—XIX դդ. բուսական զարդանախշերը միահյուսվել են մարդկանց և կենդանիների ռեալիստական ֆիգուրներին: Սրբապատկերակալների քանդակազարդումով հայտնի է Դեբար քաղաքի դպրոցը:



«Ս. Կղեմենս Օխրիդեցի», փայտ (XIII—XIV դդ., Գեղարվեստական պատկերասրահ, Սկոպյե)



Ն. Մարտինոսկի. «Կարմրազգեստ գնչուհին» (1937, Վ. Կոջոմանի հավաքածու, Սկոպյե)

XIX դ. վերջին —XX դ. սկզբին Մ-ի քաղաքների կառուցապատումը տարերային էր: Ժող. իշխանության տարիներին քաղաքները վերակառուցվում և կառուցապատվում են գլխավոր հատակագծերով, փոխվում է գյուղերի տեսքը: Սկոպյեում 1963-ի երկրաշարժից հետո ճապոնացի ճարտ. Կ. Տանգեի նախագծով վերականգնվել է քաղաքի կենտրոնը (կառուցվել են Արհմիությունների տունը, ճարտ. Ս. Բրեզովսկի, Պատմության արխիվը, ճարտ. Գ. Կոստանդինովսկի, Մակեդոնական ժող. թատրոնը, ճարտ. Մ. Կրստոնոշիչ ևն): 1960-ական թթ. առավել նշանակալի կառույցներից են ֆաշիզմի դեմ պայքարում զոհվածների հուշահամալիրը Պրիլեպում (ճարտ. Բ. Բոգդանովիչ) և Պետրովեցի օդանավակայանի շենքը (ճարտ-ներ՝ Դ. Դիմիտրով և Տ. Դիմիտրով): Ժամանակակից կերպարվեստի զարգացման նախադրյալները մեծ մասամբ ստեղծվել են 1920—30-ական թթ. (գեղանկարիչներ՝ Լ. Լիչենսկի, Ն. Մարտինոսկի, առաջին պրոֆեսիոնալ քանդակագործներ՝ Դ. Տոդորովսկի, Պ. Հաջի-Բոշկով): Մ-ի կերպարվեստը հիմնականում զարգանում է ռեալիստական ուղղությամբ (գեղանկարիչներ՝ Դ. Պրոտուջեր, Լ. Մազև, քանդակագործ՝ Վ. Միտրիչևսկի և ուրիշներ), որի ավանդույթները 1960-ական թթ. սերնդի ստեղծագործություններում զուգորդվում են նոր արտահայտչամիջոցների որոնման հետ (գեղանկարիչներ՝ Գ. Չեմերսկի, Ս. Շեմով, գրաֆիկ՝ Դ. Պերչինկով, քանդակագործ՝ Ս. Մանևսկի):

Զարգացման նոր շրջան են ապրում փայտի քանդակազարդումը, արծաթի դրվագումը, ասեղնագործությունը, գորգագործությունը և ժող. արվեստի այլ ավանդական ճյուղեր:

**Երաժշտությունը**: XIX դ. վերջին — XX դ. սկզբին Մ-ի տարածքում ստեղծվել են աշխարհիկ երաժշտական մշակույթի զարգացման նախադրյալներ: 1895-ին Սկոպյեում ստեղծվել է փողային նվագախումբ, 1907-ին՝ «Վարդար» երգչական ընկերությունը: 1900-ական թթ. պրոֆեսիոնալ առաջին երաժիշտը Ա. Բադևն է: 1928-ին Ս. Արսիչը Սկոպյեում կազմակերպել է Մ-ում առաջին երաժշտական դպրոցը, 1934-ին նույն տեղում հիմնադրվել է Մոկրանյացի անվ. երաժշտական դպրոցը, 1937-ին՝ լարային կվարտետը: 1930-ական թթ. հանդես են եկել կոմպոզիտորներ Ս. Գայդովը, Ժ. Ֆիրֆովը և ուրիշներ: 1941—45-ի ժող.-ազատագրական պատերազմի տարիներին ստեղծվել են մասսայական հայրենասիրական բազմաթիվ երգեր: 1960—70-ական թթ. Մ-ում օպերային, բալետային, սիմֆոնիկ, կամերային, խմբերգային, վոկալ, գործիքային երաժշտության ժանրերում աշխատել են կոմպոզիտորներ Տ. Պրոկոպևը, Բ. Իվանովսկին, Վ. Նիկոլովսկին, Տ. Պրոշևը և ուրիշներ: Սկոպյեում գործում են՝ ֆիլհարմոնիա (1944-ից), Մակեդոնական ժող. թատրոնին կից պետ. օպերա (1947-ից), միջնակարգ երաժշտական դպրոց և մանկավարժական ինստիտուտին կից երաժշտության ամբիոն (1953-ից), ռադիոյի երգչախումբը (1945-ից) և լարային քառյակը (1946-ից): Ստեղծվել է կոմպոզիտորների միություն:

**Թատրոնը**: 1901-ին Վ. Չեռնոդրինսկին հիմնել է «Հոգս և սփոփանք» թատերախումբը, որ 1903-ին հաջողությամբ ելույթներ է ունեցել Բելգրադում և Սերբիայի այլ քաղաքներում: 1913-ին Սկոպյեում բացվել է առաջին մշտական սերբական

ժող. թատրոնը (մինչև 1915-ը դիրեկտորն էր Բ. Նուշիչը), որը 1945-ին վերանվանվել է Մակեդոնական ժող. թատրոն: 1927—1928-ին բեմադրվել է Վ. Էլինսկու «Փախըստական կինը» պիեսը՝ առաջին պրոֆեսիոնալ ներկայացումը մակեդոներեն: Թատրոնում գործում են դրամատիկական, բալետային և օպերային թատերախմբեր: Խաղացանկում հարավսլավական դրամատուրգների (Բ Նուշիչ, Մ. Կրլեժա, Ռ. Կրլե), ժամանակակից մակեդոնացի հեղինակների (Կ. Չաշուլե, Տ. Արսովսկի), արտասահմանյան դասականների (Շեքսպիր, Պ. Կոռնել, Ա. Չեխով), ժամանակակից արտասահմանյան դրամատուրգների (Բ. Բրեխտ, Ֆ. Գարսիա Լորկա) ստեղծագործություններն են: Դերասաններից են Տ. Նիկոլովսկին, Պ. Պրլիչկոն, Կ. Ստոյանովը, Մ. Բոշկովան և ուրիշներ, գեղարվեստական ղեկավարներից՝ Դ. Կոստարովը, Մ. Միլլինը, Բ. Ստավրևը:

*Գրկ.* История Югославии, т. 2, М., 1963; Беляева Ю., Современная македонская проза, в кн.: Развитие зарубежных славянских литератур на современном этапе, М., 1966; Памятники культуры. Сербия и Македония, [Белград, 1958]; Алешина Л. С., Яворская Н. В., Искусство Югославии. Очерки, М., 1966.

**ՄԱԿԵԵՎԿԱ**, քաղաք Ուկրաինական ՍՍՀ Դոնեցկի մարզում, Գրուզսկայա գետի ափին: 439 հզ. բն. (1980): Երկաթուղային կայարան է, մետալուրգիական և ածխի արդյունաբերության կենտրոն: Կան ածխի կոմբինատ, մետալուրգիական, խողովակաձուլման, կոքսաքիմիական, ցեմենտի և այլ գործարաններ, ածխահարստացուցիչ ֆաբրիկաներ, թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկություններ, ինժեներա-շինարարական ինստ., երեկոյան լեռնային, մետալուրգիական, շինարարական տեխնիկումներ, բժշկ., մանկավարժական ուսումնարաններ, պատանի հանդիսատեսի թատրոն, հայրենագիտական թանգարան: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով (1977):

**ՄԱԿԵՆԶԻ**, Մ ա կ կ ե ն զ ի (Mackenzie), գետ Կանադայի հյուսիս-արևմուտքում: Բուն Մ-ի երկարությունը մոտ 1600 *կմ* է (Փիսի հետ՝ 4250 *կմ*), ավազանը՝ 1804 հզ. *կմ²*: Սկիզբ է առնում Մեծ Ստրկական լճից, հոսում Մակենզիի դաշտավայրով և առաջացնելով դելտա (12 հզ. *կմ²*)՝ թափվում է Հյուսիսային սառուցյալ օվկիանոսի Բոֆորտի ծովը: Սնումը ձնանձրևային է: Վարարում է գարնանն ու ամռանը, սառցակալում՝ սեպտեմբերից մինչև մայիս: Նավարկելի է ամբողջ համակարգի 2200 *կմ*: Մ-ի ափերին են Ակլավիկ, Ինուվիկ, Նորման Ուելս և այլ քաղաքներ: Մ. հայտնաբերել և առաջին անգամ նրանով անցել է Ա. Մակենզին, 1789-ին:

**ՄԱԿԵՏ** (ֆրանս. maquette, < իտալ. macchietta — ուրվանկար) պ ո լ ի գ ր ա ֆ ի ա յ ո ւ մ, 1. Մ. է ջ կ ա պ ի, ապագա հրատարակության ֆորմատին համասար ֆորմատով թերթեր, որոնց վրա ճիշտ հաջորդականությամբ փակցվում են տեքստի շարվածասյուները և պատկերազարդումների տպվածքները: 2. Մ. ծ ա վ ա լ ա յ ի ն, գրքի փորձնական օրինակ, որի ծավալը և ֆորմատը համապատասխանում են տրվածին: Մ-ով որոշում են գրքի կազմակողի չափերը և քննարկում ապագա հրատարակության ձևավորումը:

**ՄԱԿԵՏ** (ճ ա ր տ ա ր ա պ ե տ ու թ յ ա ն և ք ե մ ա ն կ ա ր չ ու թ յ ա ն մ ե ջ), տես *Մանրակերտ*:

**ՄԱԿԵՐԵՍ**, երկրաչափական պատկերների հիմնական բնութագրերից մեկը: Պարզագույն դեպքում, հարթ պատկերի Մ. պատկերը լրիվ լցնող միավոր երկարություն ունեցող կողմերով քառակուսիների (միավոր քառակուսիների) քանակն է: Պատկերի Մ. ավելի խիստ սահմանվում է այսպես.

1. հ ա ր թ պ ա տ կ ե ր ի դ ե պ ք ը: Դիցուք, F հարթ պատկերի եզրագիծը ինքնահատումներ չունեցող պ ա ր զ կ ո ր է: Պատկերի հարթությունը ծածկվում է միավոր քառակուսիների ցանցով: Պատկերի ներսում ընկած բոլոր միավոր քառակուսիների Մ-ների գումարը նշանակենք $S_0(F)$, իսկ պատկերի հետ գոնե մեկ ընդհանուր կետ ունեցող քառակուսիների մակերեսների գումարը ($F$-ը պարունակվում է այդ քառակուսիների միավորման մեջ) նշանակենք $\bar{S}_0(F)$: Ապա յուրաքանչյուր միավոր քառակուսու կողմը բաժանվում է 10 (հավասար) մասի, և հարթությունը ծածկում են $\frac{1}{10}$-երկարություն ունեցող կողմով քառակուսիներով. պատկերի ներսում ընկած այդպիսի քառակուսիների մակերեսների գումարը նշանակենք $S_1(F)$, իսկ պատկերի հետ գոնե մեկ ընդհանուր կետ ունեցող այդպիսի քառակուսիների մակերեսների գումարը նշանակենք $\bar{S}_1(F)$: Այնուհետև միավոր քառակուսու կողմը բաժանվում է $\frac{1}{10^2}$, $\frac{1}{10^3}$,… մասերի. և հանգունորեն ստացվում են $S_2(F)$, $\bar{S}_2(F)$,… $S_k(F)$, $\bar{S}_k(F)$,… թվերը (նկ. 2): Եթե $\{S_k(F)\}$ և $\{\bar{S}_k(F)\}$ թվային հաջորդականություններն ունեն միևնույն սահմանը, ապա պատկերը անվանում են քառակուսելի, իսկ այդ սահմանը (այն կնշանակենք $S(F)$-ով) անվանում են պատկերի մակերես: Ընդհանրապես ասած ոչ բոլոր պատկերներն են քառակուսելի՝ (ոչ բոլոր պատկերներն ունեն մակերես): Կան պատկերներ, որոնց համար $\{\bar{S}_k(F)\}$ և $\{S_k(F)\}$ հաջորդականություններն ունեն տարբեր սահմաններ, բայց բավականաչափ լայն դաս կազմող պատկերներ, օրինակ, այն պատկերները, որոնց եզրագծի մակերեսը զրո է, քառակուսելի են: Մ-ի վերը նշված սահմանումը կոնստրուկտիվ է՝ սահմանելուց բացի այն նաև տալիս է Մ. հաշվելու եղանակ: Կարելի է տալ Մ-ի, այսպես կոչված, աքսիոմատիկ սահմանում. F պատկերի Մ. մի ($S(F)$) թիվ է (Մ. քառակուսելի պատկերների բազմության վրա որոշված թվային ֆունկցիա է), որը բավարարում է հետևյալ պայմաններին՝

ա. $S(F)\geqslant 0$,

բ. Եթե $F_1$ և $F_2$ պատկերները չունեն ընդհանուր ներքին կետ, ապա՝

$$S(F_1 \cup F_2)=S(F_1)+S(F_2),$$

գ. միավոր քառակուսու մակերեսը հավասար է 1-ի:

դ. Եթե $F_1$ և $F_2$ պատկերները համընկնելի (կոնգրուենտ) են, ապա՝ $S(F_1)=S(F_2)$:

Կոնստրուկտիվ սահմանված մակերեսը նույնպես ունի ա.-ից դ. հատկությունները. ապացուցվում է, որ ա.-ից դ. պայմաններին բավարարող մակերեսը միակն է՝ ցանկացած այդպիսի Մ. համընկնում է կոնստրուկտիվ մակերեսի հետ:

Եթե F պատկերը $y=f(x)$ ֆունկցիայի գրաֆիկով, $x=a$, $x=b$ և $y=0$ ուղիղներով սահմանափակված կորագիծ սեղանն է (նկ. 1), ապա՝ $S(F)=\int_a^b f(x)dx$.

ընդհանուր դեպքում՝ $S(F)=\iint_F dxdy$:



Նկ. 1

2. Կ ա մ ա յ ա կ ա ն (ա ն պ ա յ մ ա ն ո չ է հ ա ր թ) պ ա տ կ ե ր ի դ ե պ ք ը: Դիցուք, F-ը որևէ մակերևույթի վրա ընկած պատկեր է: F-ը շրջափակող 2δ լայնություն ունեցող շերտի (նկ. 3) ծավալը նշանակենք $V_\delta(F)$: Եթե գոյություն ունի $\lim_{\delta\to 0}\frac{V_\delta(F)}{2\delta}=S(F)$ սահմանը, ապա F պատկերն անվանում են քառակուսելի, իսկ $S(F)$-ը՝ F-ի Մ.: Եթե F-ը ընկած է $z=f(x, y)$ հավասարումով տրված մակերևույթի վրա, ապա՝

$$S(F)=\iint_G \sqrt{1+(f_x^2)+(f_y)^2}dxdy,$$

որտեղ G-ն F-ի պրոյեկցիան է XOY հարթության վրա:



$S_0(F)=20$
$\bar{S}_0(F)=50$
Նկ. 2



Նկ. 3

**ՄԱԿԵՐԵՍՆԵՐԻ ՕՐԵՆՔ**, կենտրոնական ուժերի ազդեցությամբ նյութական կետի (կամ մարմնի իներցիայի կենտրոնի) շարժման օրենք, ըստ որի. ա. կետի հետագիծը ուժի կենտրոնով անցնող հարթության մեջ գտնվող հարթ կոր է, բ. ուժի կենտրոնից տարված կետի շառավիղ-վեկտորի գծած մակերեսն աճում է ժամանակին համեմատական, այսինքն՝ կետը շարժվում է հաստատուն սեկտորային արագությամբ: Մ. օ. հայտնագործել է Յո. Կեպլերը (Արեգակի շուրջը մոլորակների շարժման համար) և հրատարակել 1609-ին (տես *Կեպլերի օրենքներ*): Ընդհանուր դեպքի համար ապացուցել է Ի. Նյուտոնը (1687):

**ՄԱԿԵՐԵՎՈՒԹԱՅԻՆ ԱԼԻՔՆԵՐ**, *առաձգական ալիքներ*, որոնք տարածվում են պինդ մարմնի ազատ մակերևույթով կամ ուրիշ միջավայրերի հետ պինդ մարմնի ունեցած սահմանով և մարում այդ սահմանից հեռանալիս, ինչպես նաև ալիքներ, որոնք առաջանում և տարածվում են հեղուկի ազատ մակերևույթով կամ երկու չխառնվող հեղուկների բաժանման մակերևույթով: Պարզագույն և գործնականում հաճախ հանդիպող Մ. ա. են Ռելեյի ալիքները, որոնք տարածվում են պինդ մարմնի ազատ սահմանի մոտակայքում և խորության հետ մարում: Ռելեյի ալիքների օրինակներ են երկրաշարժերի ժամանակ Երկրի մակերևույթի վրա առաջացող ալիքները, ուլտրաձայնային Մ. ա. պինդ մարմիններում ևն: Մ. ա-ի պատճառով հեղուկի մակերևույթի խախտված հավասարակշռությունը վերականգնող ուժերի բնույթից կախված՝ տարբերում են. մազական ալիքներ, եթե մակերևութային լարվածության ուժերն են գերակշռում, և գրավիտացիոն ալիքներ, եթե ծանրության ուժերն են գերակշռում: Գրավիտացիոն ալիքների առաջացման պատճառներից է Լուսնի և Արեգակի ձգողությունը (մակընթացություն և տեղատվություն): Ծանրության ու մակերևութային լարվածության ուժերի համատեղ գործողության դեպքում ալիքները կոչվում են գրավիտացիոն-մազական: Մակերևութային լարվածության ուժերի ազդեցությունն էական է փոքր ալիքների, ծանրության ուժերինը՝ մեծ ալիքների դեպքում: Հեղուկի մակերևույթի վրա ալիքների տարածման c արագությունը կախված է ալիքի λ երկարությունից: Ալիքի երկարության մեծացման հետ գրավիտացիոն-մազական ալիքների տարածման արագությունը սկզբում նվազում է մինչև որոշ $c_1=\sqrt[4]{4g\sigma/\rho}$ արժեքը (σ-ն մակերևութային լարվածությունն է, g-ն՝ ծանրության ուժի արագացումը, ρ-ն՝ հեղուկի խտությունը), այնուհետև աճում: $c_1$ արժեքին համապատասխանում է $\lambda_1=2\pi\sqrt{\sigma/g\rho}$ երկարության ալիք: $\lambda>\lambda_1$ դեպքում տարածման արագությունն առավելապես կախված է ծանրության ուժից, իսկ $\lambda<\lambda_1$ դեպքում՝ մակերևութային լարվածության ուժերից: Օդի և ջրի բաժանման մակերևույթի համար $\lambda_1=1{,}72$ *սմ*:

*Հ. Ծարըյան*

**ՄԱԿԵՐԵՎՈՒԹԱՅԻՆ ԱԿՏԻՎ ՆՅՈՒԹԵՐ**, ֆազերի բաժանման մակերևույթի վրա ադսորբվելու ունակ նյութեր, որոնց չնչին քանակները (0,01—0,1%) խիստ փոքրացնում են *մակերևութային լարվածությունը*: Մ. ա. ն. որգ. միացություններ են, որոնց մոլեկուլները կազմված են միջավայրի հետ տարբեր կերպ փոխազդող ատոմական խմբերից՝ ածխաջրածնային ռադիկալներից (հիդրոֆոբ, լիոֆիլ) և բևեռային (հիդրոֆիլ՝ —COOH, —OH, —$NH_2$ ևն) խմբերից: Հիդրոֆոբ խմբերի թույլ փոխազդեցությունը ջրի հետ պայմանավորում է ջրից նրանց վանվելու և որգ. ֆազ անցնելու ձգտումը, իսկ բևեռային խմբերը մոլեկուլները պահում են ջրային ֆազում կամ ձգտում են որգ. ֆազից նրանց տեղափոխել դեպի ջուր:

Տարբերում են ցածրամոլեկուլային և բարձրամոլեկուլային, իոնային (անիոնային՝ որգ. թթուները և դրանց աղերը, կատիոնային՝ ամինները, չորրորդային ամոնիումային աղերը ևն) և ոչ իոնային (պոլիօքսիէթիլենային եթերներ), ինչպես նաև *միցելներ* առաջացնող ու չառաջացնող Մ. ա. ն.: Մ. ա. ն. օգտագործվում են արդյունաբերության, գյուղատնտեսության, բժշկության մեջ և կենցաղում, որպես *լվացող միջոցներ*, *օծանելիք*, ֆլոտացնող, մանածագործական օժանդակ, նավթամթերքների որակը բարձրացնող նյութեր, էմուլսիաների և կոլոիդային համակարգերի կայունացուցիչներ ևն: Լայն կիրառումը պահանջում է ստեղծել շրջապատը չկեղտոտող, բնական պայմաններում կենսաքիմիական քայքայման ենթարկվող Մ. ա. ն.: Բնական Մ. ա. ն. կարևոր են կենսաքիմիական պրոցեսներում, մտնում են արյան, մարսողական, բուսական հյութերի բաղադրության մեջ:

**ՄԱԿԵՐԵՎՈՒԹԱՅԻՆ ԵՐԵՎՈՒՅԹՆԵՐ**, մարմինների (միջավայրերի, ֆազերի) հպման սահմանում մակերևութային շերտերի յուրահատկությունների հետ կապված երևույթների համախումբ: Պայմանավորված են մակերևութային շերտի *ազատ էներգիայի* հավելուրդով (մակերևութային էներգիա), մակերևութային շերտի բարձր ակտիվությամբ և մոլեկուլների կողմնորոշմամբ, ինչպես նաև այդ շերտի կառուցվածքի ու կազմության առանձնահատկություններով: Քանի որ մարմինների ֆիզիկական փոխազդեցությունները հիմնականում տեղի են ունենում մակերևութային շերտերում, ուստի Մ. ե. կարող են ունենալ միայն ֆիզիկական բնույթ կամ ուղեկցվել քիմ. փոխակերպումներով: Մ. ե. կապված են մակերևույթի մեծության համեմատական մակերևութային էներգիայի նվազման հետ: Այսպես, կաթիլների և գազային պղպջակների, ինչպես նաև բյուրեղների աճի ընթացքում դրանց հավասարակշռված ձևերի գոյացումը որոշվում է ազատ էներգիայի մինիմումով՝ հաստատուն ծավալի դեպքում: Հեղուկների բաժանման մակերևույթների բարդ ձևերը, որոնք գոյանում են մոլեկուլային ուժերի (մակերևութային լարվածության, թրջման) և արտաքին ուժերի (ծանրության ուժ) համատեղ ներգործությամբ, դիտարկվում են մազականության տեսության մեջ (տես *Մազական երևույթներ*): Մ. ե-ով են պայմանավորված մետաստաբիլ վիճակում գտնվող համասեռ միջավայրում (գերհագեցած գոլորշի, լուծույթ, հալույթ) նոր ֆազի մասնիկների առաջացումն ու աճը, կրիտիկական վիճակում գտնվող երկֆազ համակարգում (հեղուկ-գոլորշի, հեղուկ 1-հեղուկ 2) բաժանման մակերևույթի անհետացումը, միկրոանհամասեռ դիսպերս համակարգերի առաջացման և երկարատև գոյության հնարավորությունը, այդպիսի համակարգերում տարբեր տեսակի դիսպերս կառուցվածքների ձևավորման ժամանակ կոլոիդ մասնիկների փոխազդեցությունը (կոագուլյացում, կոալեսցենցում):

Պինդ մարմիններում Մ. ե. տեղի են ունենում ամենից առաջ մարմնի արտաքին մակերևույթի վրա: Երկու պինդ մարմինների կամ հեղուկ և գազային միջավայրերի հետ պինդ մարմնի հպման մակերևույթի հատկություններով են որոշվում այնպիսի երևույթների պայմանները, ինչպիսիք են *կոհեզիան*, *ադհեզիան*, *թրջումը*, *շփումը* ևն: Մակերևութային (մոնոմոլեկուլային) շերտերի կամ ֆազային (բազմամոլեկուլային) թաղանթների գոյացման հետևանքով մակերևույթի մոլեկուլային բնույթը և հատկությունները կարող են հիմնովին փոփոխվել: Այդպիսի փոփոխությունները հաճախ տեղի են ունենում հպվող ֆազերի բաղադրիչների քիմ. փոխազդեցության (քեմոսորբում, մակերևութային ռեակցիա) կամ ֆիզիկական պրոցեսների (ադսորբում, մակերևութային դիֆուզիա) հետևանքով: Տարբեր նիստերի վրա մակերևութային լարվածության տարբեր արժեքներ ունեցող բյուրեղի մակերևութային ազատ էներգիայի մինիմումի պայմանից մաթեմատիկորեն արտածվում են բյուրեղային բազմանիստերի բոլոր հնարավոր ձևերը: Հաղորդչի կամ կիսահաղորդչի՝ էլեկտրական լիցքեր կրող մակերևութային շերտում տեղի ունեցող ֆիզիկական կամ քիմ. փոփոխությունները էապես ազդում են Մ. ե-ի յուրահատուկ խումբ կազմող այնպիսի երևույթների ընթացքի վրա, ինչպիսիք են էլեկտրակինետիկ, էլեկտրամազական երևույթները, էլեկտրոդային պրոցեսները, էլեկտրոնային էմիսիան, մակերևութային հաղորդականությունը, մակերևութային ռեկոմբինացիան:

Մ. ե. կարևոր դեր են կատարում նաև կենդանի համակարգերում ընթացող բազմապիսի պրոցեսներում՝ հատկապես այդ համակարգերի կազմավորման բջջային, ենթաբջջային և մոլեկուլային փուլերում: Կենդանի համակարգերին հատուկ Մ. ե. անկենդան բնության մեջ տեղի ունեցող Մ. ե-ից տարբերվում են առավել ցայտուն քիմ. յուրահատկությամբ, տարածական և ժամանակային փոխհամաձայնեցվածությամբ: Էվոլյուցիայի ընթացքում կենսագործունեության պրոցեսների մեջ Մ. ե-ի դերն աճում է:

*Գրկ.* Семенченко В. К., Поверхностные явления в металлах и сплавах, М., 1957; Гиббс Дж. В., Термодинамические работы, пер. с англ., М.—Л., 1958; Русанов А.И., Фазовые равновесия и поверхностные явления, Л., 1967.

*Հ. Ծարըյան*

**ՄԱԿԵՐԵՎՈՒԹԱՅԻՆ ԻՆՏԵԳՐԱԼ**, որևէ մակերևույթի վրա որոշված ֆունկցիայի ինտեգրալ: Հարմար միջոց է ֆիզիկայի և մեխանիկայի որոշ խնդիրներ լուծելու համար:

Դիցուք, f(M)-ը ֆունկցիա է՝ որոշված S մակերևույթի վրա: S-ը բաժանելով $S_1,\ldots,S_n$ մասերի և դրանց մեջ ընտրելով $M_i(\in S_i)$ կետեր, կազմում են $\sum_{i=1}^{n} f(M_i)\cdot|S_i|$ գումարներ, որտեղ $|S_i|$-ն $S_i$ մակերևույթի մակերեսն է: Եթե $|S_i|$-երի փոքրանալուց այդ գումարները ձգտում են որոշակի սահմանի, ապա այն անվանում են I սեռի Մ. ի. և նշանակում $\iint\limits_{(S)} f(M)ds$ կամ $\iint\limits_{(S)} f(x,y,z)ds$: II սեռի Մ. ի. օրինակ, $\iint\limits_{(S)} f(M)dxdy$ սահմանվում է հանգունորեն, այն տարբերությամբ, որ $S_i$-ի փոխարեն վերցվում է (x, y) հարթության վրա $S_i$-ի պրոյեկցիայի մակերեսը + (—) նշանով, եթե $M_i$ կետում դրական նորմալը Z առանցքի հետ կազմում է սուր (բութ) անկյուն: Այսպիսով, II սեռի Մ. ի-ի նշանը կախված է S-ի կողմնորոշումից, այսինքն, թե նորմալի որ ուղղությունն է համարվում դրական (տես *Կողմնորոշվածություն*): Հանգունորեն սահմանվում են $\iint\limits_{(S)} f(M)dxdz$, $\iint\limits_{(S)} f(M)dydz$ ինտեգրալները: Կարևոր դեր են խաղում տարբեր սեռի ինտեգրալները միմյանց կապող բանաձևերը: Օրինակ, *Գաուս-Օստրոգրադսկու բանաձևը*, *Ստոքսի բանաձևը*:

**ՄԱԿԵՐԵՎՈՒԹԱՅԻՆ ԼԱՐՎԱԾՈՒԹՅՈՒՆ**, մարմինների (ֆազերի) բաժանման մակերևույթի թերմոդինամիկական բնութագիր: Սահմանվում է իբրև այդ մակերևույթի միավոր մակերեսի դարձելի իզոթերմ գոյացման համար ծախսված աշխատանք: Երկու կոնդենսացված ֆազերի սահմանի Մ. լ. կոչվում է միջֆազային լարվածություն: Նոր մակերևույթի գոյացման աշխատանքը ծախսվում է միջմոլեկուլային փոխազդեցության (*կոհեզիայի*) ուժերի հաղթահարման համար, երբ մարմնի ծավալից մոլեկուլները (ատոմները) տեղափոխվում են մակերևութային շերտը: Չափվում է $\text{ջ}/\text{մ}^2$-ով կամ $\text{ն}/\text{մ}$-ով:

**ՄԱԿԵՐԵՎՈՒԹԱՅԻՆ ՃՆՇՈՒՄ**, հարթ ճնշում, երկչափանի ճնշում, հեղուկի մաքուր մակերևույթը այդ նույն հեղուկի՝ մակերևութային-ակտիվ նյութի ադսորբցիոն շերտով պատված մակերևույթից բաժանող սահմանի (արգելքի) միավոր երկարության վրա ազդող ուժը: Ունի մոլեկուլային-կինետիկ բնույթ, ուղղված է դեպի մաքուր մակերևույթի կողմը և չափվում է մաքուր հեղուկի և ադսորբցիոն միաշերտով պատված հեղուկի *մակերևութային լարվածությունների* տարբերության մեծությամբ:

**ՄԱԿԵՐԵՎՈՒՅԹՆԵՐԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ**, տես *Դիֆերենցիալ երկրաչափություն*:

**ՄԱԿԵՐԻԿԱՄՆԵՐ** (glandulae suprarenales), բարձրակարգ ողնաշարավոր կենդանիների և մարդու ներզատիչ գեղձային զույգ օրգան: Մարդու Մ-ի կշիռը 10—12 *գ* է, երկարությունը՝ 25—30 *մմ*, հաստությունը՝ 6—10 *մմ*: Գտնվում են որովայնի խոռոչում՝ ետորովայնամզային տարածությունում՝ կրծքային և գոտկային 1-ին ողների սահմանում: Աջը բրգաձև է, փոքր է ձախից և տեղադրված է երիկամի վերին բևեռին, ձախը կիսալուսնաձև է և հպվում է երիկամի առաջային միջային եզրին: Մ-ի առաջային մակերեսին գտնվում է դրունքը, որով անցնում են նրա արյան և ավշային անոթներն ու նյարդերը: Մ-ին արյուն են մատակարարում մակերիկամային վերին, միջին և ստորին զարկերակները, նյարդավորում ընդերային մեծ նյարդի ճյուղերը: Մ. բաղկացած են կեղևային և միջուկային նյութից: Կաթնասուն կենդանիների և մարդու Մ-ի կեղևային նյութը կամ կեղևը կազմված է էպիթելային բջիջներից գոյացած երեք գոտիներից (խրձային, կծիկային, ցանցային) և արտադրում է ստերոիդային ավելի քան 40 միացություն՝ *կորտիկոստերոիդներ*, որոնք ազդում են հանքային նյութերի և ածխաջրերի փոխանակության, ինչպես նաև սեռական ֆունկցիայի վրա: Կեղևի ֆունկցիան կարգավորվում է *հիպոֆիզի* առաջային բլթում արտադրվող *ադրենոկորտիկոտրոպ հորմոնով*: Մ-ի միջուկային նյութը կազմված է հիմնականում էպիթելային բազմանկյուն խոշոր բջիջներից, որոնք գոյացնում են շարակցական հյուսվածքով և երակային մազանոթային ծոցերով միմյանցից սահմանազատված հանգույցներ: Միջուկային նյութում արտադրվում են կատեխոլամիններ (ադրենալին, նորադրենալին), որոնք հաճախացնում և ուժեղացնում են սրտի կծկումները, բարձրացնում արյան ճնշումը, թուլացնում բրոնխների, միզապարկի հարթ մկանունքը, մասնակցում ածխաջրային փոխանակության կարգավորմանը: Մ-ի ֆունկցիան գտնվում է նյարդային համակարգի և նրա բարձրագույն բաժնի՝ գլխուղեղի մեծ կիսագնդերի կեղևի հսկողության տակ:

*Լ. Մանուկյան*

**ՄԱԿԸՆԹԱՑԱՅԻՆ ԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆ (ՄԷԿ)**, ծովային մակընթացությունների էներգիան էլեկտրականի փոխակերպող *էլեկտրակայան*: ՄԷԿ-երն օգտագործում են *մակընթացության և տեղատվության* ժամանակ ավազանի և ծովի միջև առաջացող ջրի մակարդակների անկումը: ՄԷԿ-երում տեղադրում են պատիճավոր հիդրոագրեգատներ, որոնք կարող են կիրառվել համեմատաբար մեծ օ. գ. գ-ով գեներատորային և պոմպային ռեժիմներում, ինչպես նաև որպես ջրթող բացակ: Երբ մակընթացությունը կամ տեղատվությունը ըստ ժամանակի համընկնում է էներգահամակարգի առավելագույն բեռնվածքի հետ, ՄԷԿ-ը աշխատում է գեներատորային ռեժիմով: Այսպիսով, էներգահամակարգում ՄԷԿ-ը կարող է օգտագործվել որպես պիկային էլեկտրակայան: Էլեկտրաէներգիայի արտադրման ռեժիմը կախված է մակընթացությունների ռեժիմից:

**ՄԱԿԸՆԹԱՑՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՏԵՂԱՏՎՈՒԹՅՈՒՆ**, Երկրի ծովերի մակարդակների ու մթնոլորտային ճնշման պարբերական տատանումներ, ինչպես նաև պինդ մասի դեֆորմացիաներ, որոնք պայմանավորված են Լուսնի ու Արեգակի ձգողականությամբ:

Երկրի՝ Լուսնից տարբեր հեռավորությունների վրա գտնվող մասերը Լուսնի կողմից ձգվում են տարբեր չափով, որի պատճառով ստանում են տարբեր արագացումներ: Դրա հետևանքով Երկրի՝ Լուսնին ամենամոտ և նրանից ամենահեռու մասերը, կենտրոնական մասի նկատմամբ, գրեթե նույն չափով բարձրանում են. Երկրի այդ մասերում տեղի է ունենում մակընթացություն: Ընդհակառակը, մեր մոլորակի Երկիր—Լուսին ուղղությանն ուղղահայաց մասերում տեղի է ունենում մակերևույթի իջեցում՝ տեղատվություն: Այսպիսով, Երկրի ջրային թաղանթն ընդունում է էլիպսոիդի ձև, որի մեծ առանցքն ուղղված է Երկիր—Լուսին ուղղությամբ: Լուսնի շարժմանը զուգընթաց տեղափոխվում են նաև մակընթացային ալիքները: Քանի որ Երկրի տվյալ միջօրեականում Լուսինը լինում է 24 *ժ* 52 *ր* պարբերությամբ, ապա այդ ժամանակամիջոցում տվյալ վայրում երկու անգամ տեղի է ունենում մակընթացություն և երկու անգամ՝ տեղատվություն: Մ. և տ. առաջանում են նաև Արեգակի ձգողականության շնորհիվ, սակայն Արեգակի շատ մեծ հեռավորության պատճառով դրանք, միջին հաշվով, 2,16 անգամ ավելի թույլ են:

Օվկիանոսներում, սովորաբար, ջրի մակարդակի տատանումը մեկ, իսկ ափերին 2—3 *մ* է (առավելագույնը՝ 18 *մ*): Ներքին ծովերում՝ մի քանի *սմ*: Մակընթացային ալիքների բարձրությունը կախված է նաև հատակի ու ափի ռելիեֆից և զանգվածային խտացումներից: Նավահանգիստներում չվացուցակներ կազմելիս հաշվի են առնվում Մ. և տ.: Որոշ երկրներում այդ երևույթներն օգտագործում են էլեկտրաէներգիա ստանալու (տես *Մակընթացային էլեկտրակայան*) և հողեր ոռոգելու նպատակով:

Մ. և տ. առաջանում են նաև Երկրի մթնոլորտում, որի պատճառով փոքր չափով փոփոխվում է մթնոլորտային ճնշումը. այն եղանակի փոփոխության վրա որոշիչ ազդեցություն չի ունենում:

Մ. և տ. դիտվում են նաև Երկրի կեղևում. դրա արտաքին շերտերը մինչև 50 *սմ*-ով պարբերաբար բարձրանում և իջնում են: Դեռևս հին հունական փիլիսոփաների մի մասը նկատել էր Մ. և տ-յան կախումը Լուսնի դիրքից: Հայ իրականության մեջ *Անանիա Շիրակացին* (VII դ.) առաջինն էր, որ Մ. և տ. համարում էր Լուսնի ազդեցության հետևանք: Մ. և տ-յան առաջացման գիտական բացատրությունը տվեց Ի. Նյուտոնը (*տիեզերական ձգողության օրենքի* հայտնագործումից հետո, XVII դ.), որը հետագայում (XIX դ.) զարգացրեց Ջ. Դարվինը:

*Բ. Թումանյան*

**ՄԱԿ-Ի ՔԱՐՏՈՒՂԱՐՈՒԹՅՈՒՆ**, *Միավորված ազգերի կազմակերպության* մշտապես գործող վարչական գործադիր մարմին, որի մեջ մտնում են ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարը և քարտուղարության անձնակազմը: Դասվում է ՄԱԿ-ի հիմնական մարմինների շարքը: Ղեկավարում է ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարը, որն ընտրվում է

Անվտանգության խորհրդի հանձնարարականով՝ ՄԱԿ-ի *Գլխավոր ասամբլեայի* կողմից, 5 տարի ժամկետով: Քարտուղարությունը հիմնականում կատարում է վարչա-տեխնիկական ֆունկցիաներ՝ ՄԱԿ-ի մարմինների, կոմիտեների և կոնֆերանսների սպասարկման ուղղությամբ (այդ թվում՝ ՄԱԿ-ի գրագրությունների և փաստաթղթերի վարույթը, արխիվի պահպանումը, միջազգային պայմանագրերի և համաձայնագրերի գրանցումն ու հրապարակումը, մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության միջոցով ՄԱԿ-ի գործունեության լուսաբանումը են): Նրա պարտականությունների մեջ են մտնում նաև ՄԱԿ-ի բյուջեի կազմումն ու իրացումը, անդամավճարների գանձումը, ՄԱԿ-ի և նրա մասնագիտացված հաստատությունների գործունեության կոորդինացումը են: Ունի հետևյալ ստորաբաժանումները՝ քաղ. հարցերի և Անվտանգության խորհրդի գործերի, տնտ. և սոցիալական հարցերի, խնամակալության և ինքնակառավարում չունեցող տերիտորիաների գործերի դեպարտամենտներ, գլխավոր քարտուղարի վարչական, հատուկ քաղ. հարցերով երկու պատասխանատու տեղակալների, ադմինիստրացիայի և կառավարման հարցերով գլխավոր քարտուղարի տեղակալի գրասենյակներ, վերահսկիչ, կադրերի, իրավական հարցերի, հասարակական ինֆորմացիայի, կոնֆերանսների սպասարկման, ընդհանուր սպասարկման վարչություններ, վարչա-կառավարչական, միջհիմնարկային հարցերի, մարդու իրավունքների բաժիններ, ռեգիոնալ 4 տնտ. հանձնաժողովների քարտուղարություններ, ինֆորմացիայի կենտրոններ (60 երկրներում, ներառյալ՝ ՍՍՀՄ), ՄԱԿ-ի Ժնևի բաժանմունք: ՄԱԿ-ի ք-ում աշխատում է 12325 մարդ (1978): Գլխավոր քարտուղարներ են եղել Տրյուգվե Լին (1946—1953, Նորվեգիա), Դագ Համարշելդը (1953—61, Շվեդիա), Ու Տանը (1961—71, Բիրմա), Կուրտ Վալդհայմը (1971-ից, Ավստրիա):

**ՄԱԿԻՆՑՅԱՆ** Պողոս Մկրտչի (ապրիլ, 1884, Ներքին Ագուլիս —1938), հայ սովետական պետական, կուսակցական գործիչ, գրաքննադատ, թարգմանիչ, հրապարակախոս: ՍՄԿԿ անդամ 1917-ի փետրվարից: 1906-ին ավարտել է Լազարյան ճեմարանը, 1913-ին՝ Մոսկվայի համալսարանի պատմաբանասիրական ֆակուլտետը: 1910—12-ին Մոսկվայում Վ. Տերյանի և ուրիշների հետ մեկտեղ կազմել ու խմբագրել է «*Գարուն*» ալմանախի երեք գրքերը: Այստեղ 1912-ին «Դիմագծեր» խորագրով տպագրել է Հ. Թումանյանի և Ա. Իսահակյանի մասին ուսումնասիրություններ, որոնք տալիս են այդ գրողների ստեղծագործության համակողմանի գնահատականը: Մ. համագործակցել է Մ. Գորկու և Վ. Տերյանի հետ՝ «Հայ գրականության ժողովածու»-ի (1916) հրատարակման գործում, գրել նրա առաջաբանը («Հայ գրականության ակնարկ»): Մասնակցել է «Հայաստանի պոեզիան» (1916) անթոլոգիայի կազմմանը (երկու ժողովածուի համար էլ կատարել է նյութերի ընտրություն, տողացի թարգմանություններ, ծանոթագրություններ): 1913-ին



Պ. Մ. Մակինցյան

հրավիրվել է Էջմիածնի Գևորգյան ճեմարան՝ դասավանդելու գրականության պատմություն: Այնուհետև մանկավարժական աշխատանք է կատարել Երևանում, ծավալել կուսակցական գործունեություն, Հոկտեմբերյան հեղափոխության օրերին մտել Երևանի բանվորական սովետի մեջ: 1918-ին մեկնել է Մոսկվա, աշխատել ՌՍՖՍՀ ազգ. գործերի ժողկոմատում՝ հայկ. գործերի գծով, 1919—20-ին՝ ՌՍՖՍՀ լուսավորության ժողկոմատի ազգային փոքրամասնությունների բաժնի վարիչ, 1920—21-ին՝ Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողովի՝ ազգային փոքրամասնությունների մամուլի բյուրոյի վարիչ: 1921-ին Մ. տեղափոխվել է Սովետական Հայաստան, նշանակվել ներքին գործերի ժողկոմ, աշխատել նաև որպես Ժողկոմխորհի նախագահի տեղակալ: 1921-ի սեպտեմբերից եղել է Հայաստանի լուսավորության ժողկոմը: 1922—24-ին դիվանագիտական աշխատանք է կատարել Կ. Պոլսում, 1925—27-ին՝ Միլանում և Փարիզում: Կյանքի վերջին տարիներին եղել է ՍՍՀՄ ԳԱ անդրկովկասյան մասնաճյուղի գիտական քարտուղարը: 1923—1925-ին կազմել և խմբագրել է Վ. Տերյանի չորսհատորյակը, գրել առաջաբանն ու ծանոթագրությունները, որոնք կարևոր աղբյուր են Տերյանի կյանքի և ստեղծագործության ուսումնասիրման համար: Արդյունավետ է Մ-ի՝ որպես տեքստաբանի ու թարգմանչի գործունեությունը: Հայերենի է թարգմանել Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Կոմունիստական կուսակցության մանիֆեստը», Գ. Հաուպտմանի «Ջրասույզ զանգը» չափածո դրաման, Սերվանտեսի «Դոն Կիխոտ»-ը, Ա. Պուշկինի «Բորիս Գոդունով»-ը, ռուսերենի՝ Հ. Թումանյանի «Գիքորը», Ա. Շիրվանզադեի «Քաոս»-ը, Գ. Մահարու «Մանկություն»-ը, Մ. Արմենի «Հեղնար աղբյուր»-ը և այլ գործեր: Մ. հեղինակ է գրական-հրապարակախոսական բազմաթիվ աշխատությունների:

**ՄԱԿԼԵՆԱՆ** Գորդոն (ծն. 1924, Գլազգո), Մեծ Բրիտանիայի բանվորական շարժման գործիչ: Ծնվել է բանվորական ընտանիքում: Մեծ Բրիտանիայի կոմունիստական կուսակցության (ՄԲԿԿ) անդամ՝ 1943-ից: Մասնակցել է երկրի երիտասարդական կոմունիստական և արհմիութենական շարժմանը: 1949-ից եղել է ՄԲԿԿ Գլազգոյի կազմակերպության, 1957—65-ին՝ ՄԲԿԿ շոտլանդական մարզային կազմակերպության ղեկավարներից: 1957-ից ՄԲԿԿ ԳԿ և ԳԿ քաղկոմիտեի անդամ: 1965—75-ին՝ կուսակցության ԳԿ քարտուղար (կազմակերպչական հարցերի գծով), ԳԿ կազմբաժնի վարիչ, ԳԿ երիտասարդության շրջանում տարվող աշխատանքների ենթակոմիտեի նախագահ: 1975-ի մարտից ՄԲԿԿ գլխավոր քարտուղարն է: Բրիտ. և միջազգային կոմունիստական ու բանվորական շարժմանը նվիրված աշխատությունների հեղինակ է:

**ՄԱԿԼԵՐ** (Macler) Ֆրեդերիկ (16.5.1869, Մանդոր —13.7.1938, Մոնբելյար), ֆրանսիացի հայագետ: Աշակերտել է Օ. *Կարիերին*, որից սովորել է հայերեն, ասորերեն և եբրայերեն: Մ-ի հայագիտական գործունեությունն սկսվել է «Դանիելի անվավեր հայերեն հայտնություններ» (1888) աշխատությամբ: 1911—37-ին, փոխարինելով անվանի հայագետ Ա. *Մեյեին*, հայերեն է դասավանդել Փարիզի Արևելյան կենդանի լեզուների դպրոցում: 1919-ին Շ. Դիլի, Ա. Մեյեի և Վ. Պերարի հետ հիմնադրել է «Հայագիտական ընկերությունը», իսկ 1920-ին՝ «Ռևյու դեզ էտյուդ արմենիեն» («Revue des études Arméniennes») հանդեսը, որը խմբագրել է Մ. (Ա. Մեյեի հետ) մինչև 1937-ը: 1909-ին այցելել է Հայաստան և իր տպավորությունները զետեղել «Հաշվետվություն Ռուսահայաստան և Թուրքահայաստան կատարած գիտական ուղևորության մասին» (1909) գրքում: Հայագիտությանը նվիրված մոտ 100 գործերում (հոդվածներ, մենագրություններ, ժողովածուներ) Մ. անդրադարձել է Հայաստանի աշխարհագրությանը, պատմությանը («Հայաստանի շուրջը», 1917), հայերի ծագումնաբանությանը, միջէթնիկական կապերին, մշակույթին (երաժշտություն, մանրանկարչություն, ճարտարապետություն) և այլ հարցերի: Թարգմանել ու ծանոթագրել է Ստեփանոս Տարոնացու (Պատմություն տիեզերական, 1917), Կեղծ Սեբեոսի և այլոց գործերը, թարգմանել ու կազմել է հայկ. ժող. հեքիաթների (Հայկական հեքիաթներ, 1915, Հայաստանի ժողովրդական հեքիաթները, լեգենդները և դյուցազնավեպերը, 1928) ու դիցաբանական զրույցների (Հայոց դիցերը, 1929), հայ նոր գրականության (Ժամանակակից հայ գրականությունը, Հավատք և կյանք, 1905) ժողովածուներ, ժամանակակից հայոց լեզվի քրեստոմատիա:

*Երկ.* Miniatures arméniennes, P., 1913; La musique en Arménie, P., 1917; Mosaiq Orientale, P., 1917. *Խ. Կարապետյան*

**ՄԱԿԼԵՐ** (գերմ. Makler), միջնորդ անձ կամ ֆիրմա, որը նպաստում է առևտրական կամ բորսային գործարքների կնքմանը: Մասնագիտացված է որոշակի բնագավառում, միջնորդության և խորհրդի համար վարձատրվում է:

**ՄԱԿԼՈՐԵՆ** (Maclaurin) Կոլին (1698—1746), շոտլանդացի մաթեմատիկոս, Լոնդոնի թագավորական ընկերության անդամ (1719): Ի. *Նյուտոնի* աշակերտը: Մաթ. հետազոտությունները վերաբերում են անալիզին (շարքերի տեսություն, վերջավոր տարբերությունների հաշիվ) և բարձր կարգի հարթ կորերի տեսությանը: Աշխատանքներ ունի նաև մեխանիկայի բնագավառում (պտտվող ծանր հեղուկի հավասարակշռություն են):

**ՄԱԿԼՈՒՐԱ** (Maclura), թթազգիների ընտանիքի բույսերի ցեղ: Հայտնի է 1 տեսակ՝ պ տ ղ ա բ ե ր կամ ն ա ր ն ջ ա գ ու յ ն Մ. (M. pomifera կամ Mauran-

tiaca): Մինչև 20 մ բարձրությամբ և 1 մ բնի տրամագծով տերևաթափ ծառ է: Տերևները փայլուն են, ամբողջաեզր, ձվաձև կամ երկարավուն նշտարաձև, պարուրաձև դասավորված: Յուրաքանչյուր տերևածոցում կա 1—2 բարակ փուշ: Ծաղիկները կանաչ են, երկտուն, ծաղկաբույլերով: Պտղաբույլը գնդաձև է, 10—15 *սմ* տրամագծով, կանաչ կամ դեղնանարնջագույն, կնճռոտ մակերեսով, նման նարնջին, բայց ոչ ուտելի: Հեշտությամբ բազմանում է սերմերով: Չորադիմացկուն է, հողի նկատմամբ ոչ պահանջկոտ: Հայրենիքը Հյուսիսային Ամերիկան է: ՍՍՀՄ-ում որպես դեկորատիվ ծառատեսակ լայնորեն մշակվում է Ուկրաինայում, Կովկասում, Միջին Ասիայում, ՀՍՍՀ-ում հանդիպում է Երևանի կանաչ տնկարկներում, Արարատյան դաշտում, hս-արլ. շրջանների ցածրադիր մասերում: Բնափայտն ամուր է, արժեքավոր: Բնափայտից և արմատներից ստանում են դեղին ներկ:

**ՄԱԿԿԱԼՈԿ** (McCulloch) Ուորեն (1898—1969), ամերիկյան նյարդաֆիզիոլոգ, կիբեռնետիկայի և բիոնիկայի հիմնադիրներից: Բժշկության դոկտոր 1927-ից: Հիմնական աշխատությունները նվիրված են կենտրոնական նյարդային համակարգի ուսումնասիրմանը և ուղեղի աշխատանքը վերարտադրող սխեմաների ու ցանցերի տեսությանը: Առավել մեծ ճանաչում են գտել մաթ. տրամաբանության մեթոդներով նյարդային ցանցերում ինֆորմացիոն երևույթների վերլուծությանը վերաբերող աշխատանքները: Ամերիկացի մաթեմատիկոս Ու. Փիթսի հետ մուծել է կարևոր տեսական և իմացաբանական նշանակություն ունեցող ֆորմալ նեյրոնի գաղափարը: 1964-ին ընտրվել է Կիբեռնետիկայի ամերիկյան ընկերության առաջին պրեզիդենտ:

**ՄԱԿԿԱՐԵՆ—ՎՈՒԴԻ ՕՐԵՆՔ**, ներքին անվտանգության օրենք ԱՄՆ-ում: Ընդունվել է սենատոր Մակկարենի (McCaren) և ներկայացուցիչների պալատի անդամ Վուդի (Wood) առաջարկով, 1950-ին: Սմիթի օրենքի (1950) և Բրաունել-Բաթլերի օրենքի (1954) հետ կազմել է կոմկուսի, դեմոկրատական և ձախ արմատական կազմակերպությունների դեմ պայքարի իրավական հիմքը: Սկզբում Մ-Վ. օ-ի հիման վրա, որպես «քայքայիչ» տարրեր կամ «արտասահմանյան պետության գործակալներ», պարտավոր էին ԱՄՆ-ի արդարադատության մինիստրությունում գրանցվել կոմկուսի բոլոր կազմակերպություններն ու, այսպես կոչված, կոմունիստական ճակատի բոլոր խմբերը, ներկայացնել տվյալներ այդ կազմակերպությունների թվաքանակի, պաշտոնատար անձանց ու ֆինանսական գործունեության մասին: ԱՄՆ-ի կոմկուսի համառ պայքարի շնորհիվ 1965-ին, ի վերջո, ԱՄՆ-ի գերագույն դատարանի որոշմամբ, Մ-Վ. օ. համարվեց ոչ սահմանադրական, և քրեական հետապնդումները կոմկուսի նկատմամբ դադարեցվեցին (1967): Հետագայում ոչ սահմանադրական համարվեցին նաև Մ-Վ. օ-ի մի շարք այլ հակակոմունիստական դրույթներ:

**ՄԱԿ-ՄԱՀՈՆ** (Mac-Mahon) Մարի Էդմ Պատրիս Մորիս (1808—1893), ֆրանսիական պետական և ռազմական գործիչ, Ֆրանսիայի մարշալ (1859): Մասնակցել է 1853—56-ի Ղրիմի պատերազմին: 1855-ին Մ-Մ-ի դիվիզիան գրավել է Մալախով կուրգանը (Սևաստոպոլի մոտ): 1864—70-ին եղել է Ալժիրի գեներալ-նահանգապետ: 1870—71-ի ֆրանս-պրուսական պատերազմի ժամանակ նրա բանակը պարտվել է Սեդանի մոտ (1870), ապա Մ-Մ. գլխավորել է վերսալցիների հակահեղափոխական բանակը, որը գործում էր Փարիզյան կոմունայի (1871) դեմ: 1873—79-ին Մ-Մ. եղել է Ֆրանս. հանրապետության պրեզիդենտը, հենվել է միապետական ուժերի վրա, որոնք նրա հովանավորությամբ դավեր են նյութել միապետությունը վերականգնելու համար: 1877-ին նրա մասնակցությամբ նախապատրաստվող միապետական հեղաշրջման ձախողումից և միապետականների սենատում մեծամասնությունը կորցնելուց հետո, 1879-ին, Մ-Մ. պաշտոնաթող է եղել:

**ՄԱԿ-ՄԱՆՈՒՍ** (Mac-Manus) Արթուր (1889—1927), Մեծ Բրիտանիայի բանվորական շարժման գործիչ: Եղել է ֆաբրիկային ավագներ արհմիութենական շարժման նախաձեռնողներից, 1917-ին՝ ֆաբրիկային ավագներ առաջին խորհրդի, 1917-ի մայիսից՝ միացյալ կոմիտեի, 1918-ի սեպտեմբերից՝ Ազգային վարչական խորհրդի նախագահ: Մեծ Բրիտանիայի կոմունիստական կուսակցության հիմնադիրներից է: Մասնակցել է Կոմինտերնի III կոնգրեսին (1921), ընտրվել նրա ԳԿ անդամ: Աճյունը ամփոփված է Մոսկվայի Կարմիր հրապարակում՝ Կրեմլի պատի մեջ:

**ՄԱԿՄԻԼԱՆ** (Macmillan) Հարոլդ (ծն. 1894), անգլիական պետական և քաղաքական գործիչ: 1940—45-ին պաշտոններ է զբաղեցրել Ու. *Չերչիլի* կառավարությունում: Պահպանողականների՝ իշխանության գլուխ անցնելուց (1951) հետո եղել է բնակարանային շինարարության և տեղական ինքնավարության (1951—54), պաշտպանության (1954—55), արտաքին գործերի (1955), ֆինանսների (1955—57) մինիստր, 1957—63-ին՝ պրեմիեր մինիստր: Մ. հանդես է եկել hօգուտ Արևմտյան Եվրոպայի քաղ. և տնտ. ինտեգրացիայի, միաժամանակ կողմնակից էր միջազգային վիճելի հարցերը ՍՍՀՄ-ի հետ բանակցությունների միջոցով լուծելուն: Ունի հուշագրություններ:

**ՄԱԿՆԻ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Վանի վիլայեթի Մոկսի գավառում, Վանա լճից հարավ: 1908-ին ուներ 8 տուն հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը 1915-ի հուլիսին, ռուս. զորքերի նահանջի ժամանակ, գաղթել և բնակություն են հաստատել Արևելյան Հայաստանում:

**ՄԱԿՆԻՇ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ**, իրի կամ դրա փաթեթի վրա ապրանքարտադրողի պարտադիր (ՍՍՀՄ-ում՝ 1936-ից) նշում: Բովանդակում է արտադրող ձեռնարկության լրիվ կամ հակիրճ անվանումը, գտնվելու վայրը, վերադաս կազմակերպության անվանումը, ապրանքի կարգը, պետ. ստանդարտի համարանիշը:

**ՄԱԿՈԼԵՅ** (Macaulay) Թոմաս Բաբինգթոն (1800—1859), անգլիական պատմաբան, հրապարակախոս, քաղաքական գործիչ: 1833—38-ին եղել է Հնդկաստանի փոխարքային կից Գերագույն խորհրդի անդամ, 1839—41-ին՝ ռազմ. մինիստր: Չարտիստական շարժման անհաշտ հակառակորդ էր: «Անգլիայի պատմություն» (հ. 1—5, 1849—61) բազմահատորյակում (ընդգրկում է 1685—1702-ի իրադարձությունները) Անգլիայի պատմությունը ներկայացրել է որպես *վիգերի* ղեկավարությամբ անընդհատ շարժում առաջադիմության ուղիով: 1688—89-ի պետ. հեղաշրջումը (ի հակակշիռ XVII դ. Անգլ. բուրժ. հեղափոխության) համարել է համաշխարհային պատմության մեծագույն իրադարձություններից:

**ՄԱԿՈՄ**, ուզբեկական և տաջիկական երաժշտության մեջ որոշակի լադային հիմքով մեղեդիական դարձվածք (համարժեք է *մակամին*, մուկամին, *մուղամին*): Յուրաքանչյուր Մ-ի անվանումը կապվում է *ուդ* երաժշտական գործիքի հնչյունաշարի որևէ աստիճանի անվան հետ: Բանավոր ավանդույթի ժողովրդապրոֆեսիոնալ դասական արվեստում կենցաղավարում է վեց Մ-ից բաղկացած ցիկլի՝ Շաշմակոմի տեսքով: Մ-ները հետևյալն են՝ բուզրուկ, ռաստ, նավո, դուգոհ, սեգոհ և իրոք, որոնցից ամեն մեկը ներառում է գործիքային և վոկալ բաժիններ: Զանազանում են Շաշմակոմի երկու տարբերակ՝ Բուխարայի և Խորեզմի:

*Լ. Երնջակյան*

**ՄԱԿՈՆԴԵՆԵՐ**, ժողովուրդ: Բնակվում են հիմնականում Տանզանիայի հվ-ում և մասամբ՝ Մոզամբիկի hս-արլ-ում: Ընդհանուր թիվը՝ մոտ 700 հզ. (1979): Լեզուն պատկանում է *բանտու* լեզվաընտանիքի արլ. խմբին: Մեծամասնության կրոնը մահմեդականությունն է: Զբաղվում են հիմնականում հողագործությամբ:

**ՄԱԿՈՎԵԼՍԿԻ** Ալեքսանդր Օսիպովիչ (1884—1969), սովետական փիլիսոփա: ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ (1946), Ադրբ. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1949): Ավարտել է Կազանի համալսարանը (1907), եղել է նույն համալսարանի պրոֆեսոր (1918): 1920—60-ին՝ Ադրբ. համալսարանի պրոֆեսոր, 1945—50-ին՝ Ադրբ. ՍՍՀ ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստ-ի դիրեկտոր, 1950-ից՝ ավագ գիտաշխատող: Մ-ու աշխատությունները վերաբերում են անտիկ փիլիսոփայությանը, Մերձավոր Արևելքի ժողովուրդների (այդ թվում՝ ադրբ. ժողովրդի) փիլիսոփայության պատմությանը, մասամբ՝ դիալեկտիկական մատերիալիզմին, տրամաբանությանը, հոգեբանությանը: Մ-ու թարգմանությամբ և մեկնաբանությամբ հրատարակվել են հին հուն. փիլիսոփաների աշխատություններ:

*Երկ.* Введение в философию, ч. [1]—2, Казань, 1912—16; Мораль Эпиктета, Казань, 1912; Понятие о душе в Древней Греции, Варшава, 1913; Досократики, ч. 1—3, Казань, 1914—19; Софисты, в. 1—2, Баку, 1940—41; Древнегреческие атомисты, Баку, 1946; Авеста, Баку, 1960; Категория причинности и законы природы и общества, М., 1961.

**ՄԱԿՈՎԵՅ** Օսիպ Ստեպանովիչ (1867—1925), ուկրաինացի գրող: Ավարտել է Լվովի համալսարանի փիլ. ֆակուլտետը

(1893): Հրատարակել է «Պոեզիա» (1895), «Ուղևորություն դեպի Կին» (1897) բանաստեղծությունների ժողովածուները, «Թախիծ և ծաղր» (1896), «Լեռնային խոհեր» (1899) քնարական շարքերը, «Զալեսիե» (1897), «Ցարոշենկո» (1903, հրտ. 1905) վիպակները, «Լալկանը» (1911) պիեսը: Գրել է արևմտաուկրաինական գյուղացիության կյանքի մասին: Պայքարել է ռեալիզմի, գրականության դեմոկրատական գաղափարայնության, ժողովրդայնության համար:

**ՄԱԿՈՎՍԿԻ** Վլադիմիր Եգորովիչ (1864—1920), ռուս նկարիչ: Ակադեմիկոս (1873), Պետերբուրգի Գեղարվեստի ակադեմիայի իսկական անդամ (1893): 1861—66-ին սովորել է Մոսկվայի գեղանկարչության, քանդակագործության և ճարտարապետության ուսումնարանում, 1882—94-ին՝ դասավանդել նույն ուսումնարանում, 1894—1918-ին՝ Պետերբուրգի Գեղարվեստի ակադեմիայում (1895-ից՝ ռեկտոր):



Վ. Ե. Մակովսկի. «Քաղաքագետներ» (1884, Հայաստանի պետական պատկերասրահ, Երևան)

1872-ից՝ *Պերեդվիժնիկների* ընկերության անդամ: Իր աշխատանքներում արտացոլել է քաղաքային կենցաղը («Այցելություն աղքատներին», 1874, «Բանկի սնանկացումը», 1881, «Զբոսայգում», 1886—87), ստեղծել նաև սոցիալ-քննադատական բովանդակությամբ առանձնացող գործեր («Սպասում», 1875, բոլորը՝ Տրետյակովյան պատկերասրահում, Մոսկվա, «Դատապարտվածը», 1879, Ռուսական թանգարան, Լենինգրադ), դիմանկարներ: Մ-ի դեմոկրատական հայացքները առավել արտահայտվել են «Վոլգայի վրա» նկարաշարում (1896): XIX դ. վերջին — XX դ. սկզբին արձագանքել է քաղ. կարևոր իրադարձություններին («Կին հեղափոխականի հարցաքննությունը», 1904, ՍՍՀՄ հեղափոխության թանգարան, Մոսկվա ևն): Հայտնի է նաև որպես գրաֆիկ: Նկարչի «Գյուղացի երեխաներ» (1880), «Քաղաքագետներ» (1884) և այլ աշխատանքներ գտնվում են Հայաստանի պետ. պատկերասրահում (Երևան):

**ՄԱԿՍԱԿՈՎԱ** Մարիա Պետրովնա (1902, Աստրախան — 1974, Մոսկվա), ռուս սովետական երգչուհի (մեցցո-սոպրանո): ՍՍՀՄ ժող. արտիստուհի (1971): 1919-ից՝ Աստրախանի օպերային թատրոնի, 1923—1953-ին՝ Մեծ թատրոնի մեներգչուհի: Միաժամանակ հանդես է եկել համերգներով (1935-ից՝ նաև արտասահմանում): Դերերգերից են՝ Կարմեն (Բիզեի «Կարմեն»), Մարինա Մնիշեկ, Մարֆա (Մուսորգսկու «Բորիս Գոդունով», «Խովանշչինա»): Մ. Ալմաստի (Սպենդիարյանի «Ալմաստ») դերերգի առաջին կատարողն է (1930, Մոսկվա, Մեծ թատրոնի մասնաճյուղ): Արժանացել է ՍՍՀՄ պետ. մրցանակների (1946, 1949, 1951):

**ՄԱԿՐՈ...** (< հուն. μακρός — մեծ, երկար), բարդ բառերի սկզբնամաս, որ ցույց է տալիս որևէ բանի խոշոր չափերը (ի հակադրություն *միկրո...* նախածանցի): Օրինակ, *մակրոկառուցվածք, մակրոմոլեկուլ, մակրոֆագեր*:

**ՄԱԿՐՈԿԱՌՈՒՑՎԱԾՔ** մետաղի (< *մակրո...* և կառուցվածք), մետաղի կառուցվածք, որը տեսանելի է անզեն աչքով կամ խոշորացույցի օգնությամբ (մինչև 25 անգամ մեծացնելիս): Մ. ուսումնասիրում են շինվածքից կամ նախապատրաստուկից կտրված հարթ նմուշների, ինչպես նաև շինվածքի կոտրվածքների վրա: Մ-ի հետազոտման ժամանակ կարելի է հայտնաբերել մետաղի հոծության խախտումները, խառնուկների բաշխումը, բյուրեղների ձևն ու դասավորությունը շինվածքի տարբեր մասերում:

**ՄԱԿՐՈ-, ՄԻԿՐՈ-, ՄԵԳԱԱՇԽԱՐՀ**, հասկացություններ, որոնցով պայմանականորեն նշանակվում են օբյեկտիվ իրականության առանձին տիրույթներ՝ մատերիայի կազմակերպման որոշակի կառուցվածքային մակարդակներով: Մակրոաշխարհը (սովորական՝ մակրոսկոպիկ մեծությունների աշխարհը) ընդգրկում է մեծ մոլեկուլների (մակրոմոլեկուլների), բյուրեղների, մակրոսկոպիկ մարմինների, երկրաբանական գոյացումների, մոլորակների ևն կառուցվածքային մակարդակները: Մակրոաշխարհում է ապրում և գործում մարդը, այդ պատճառով այն իրականության առավել հետազոտված մասն է: Այդ «աշխարհի» մատերիական օբյեկտների՝ մակրոօբյեկտների շարժումները նկարագրվում են *մեխանիկայի* օրենքներով:

Միկրոաշխարհը (չափազանց փոքր մեծությունների, միկրոօբյեկտների աշխարհը) ընդգրկում է մոլեկուլների, ատոմների, միջուկների, տարրական մասնիկների ևն կառուցվածքային մակարդակները: Միկրոաշխարհում կատարվող երևույթները նկարագրվում են քվանտային ֆիզիկայի (*քվանտային մեխանիկա, դաշտի քվանտային տեսություն* ևն) օրենքներով: Մեգաաշխարհը (վիթխարի մեծությունների՝ մեգաօբյեկտների աշխարհը) ընդգրկում է Արեգակնային համակարգի, աստղերի, Գալակտիկայի, գալակտիկաների համակարգի, Մետագալակտիկայի ևն կառուցվածքային մակարդակները: Այդտեղ ընթացող ուրույն պրոցեսների և մատերիայի վիճակների հետազոտությամբ զբաղվում է *աստղաֆիզիկան*:

Վ. Պողոսյան

**ՄԱԿՐՈՄՈԼԵԿՈՒԼ**, բառացի՝ մեծ *մոլեկուլ*, պոլիմերի մոլեկուլ: Մ. բաղկացած է միատեսակ (հոմոպոլիմերներում) կամ տարբեր (համապոլիմերներում) կրկնվող կառուցվածքային միավորներից՝ մոնոմերային օղակներից (տես *Պոլիմերներ*): Մ-ներից բաղկացած նյութերին անվանում են նաև բարձրամոլեկուլային միացություններ: Գծային Մ-ում մոնոմերային խմբերը միացած են կովալենտ կապերով և առաջացնում են տարբեր երկարության շղթաներ: Մ-ների շղթաների երկարությունը բնորոշվում է պոլիմերման աստիճանով (կրկնվող մոնոմերային խմբերի թվով) կամ մոլեկուլային զանգվածով, իսկ պոլիմերի մոլեկուլային զանգվածը՝ նաև մոլեկուլային զանգվածի բաշխման ֆունկցիայի տեսքով: Համապոլիմերների Մ-ները տարբերվում են նաև բաղադրությամբ (կոմպոզիցիոն տարասեռությամբ) և տարբեր մոնոմերային խմբերի հաջորդականությամբ (կոնֆիգուրացիոն տարասեռություն): Մ-ները ունեն մակրոմարմիններին հատուկ որոշ հատկություններ (օրինակ, կարող են փոխել իրենց երկրաչափական ձևը և տարածական չափերը) և ենթարկվում են փոքր համակարգերի թերմոդինամիկայի օրինաչափություններին: Մ-ի կարևոր հատկություններից է առաձգականությունը. պոլիմերային շղթան ենթարկվելով ջերմային կամ մեխանիկական ազդեցությունների՝ փոխում է իր կոնֆորմացիան առանց քիմ. փոփոխությունների ենթարկվելու: Մ-ի առաձգականությունը պայմանավորված է ատոմական խմբերի և շղթաների պարզ քիմ. կապի շուրջը պտտվելու ունակությամբ: Մ-ի առանձնահատկությունները պայմանավորում են պոլիմերներին բնորոշ ֆիզիկաքիմիական հատկությունները՝ մեծ առաձգականությունը, անիզոտրոպ թելանման գոյացումները, բարձրամածուցիկ լուծույթներ և թաղանթներ առաջացնելը ևն: Այլ Մ-ի հետ փոխազդեցության բացակայության դեպքում (օրինակ, նոսր լուծույթներում) պոլիմերային շղթաները ձեռք են բերում վիճակագրական կծիկի կոնֆորմացիա: Պոլիմերման աստիճանի մեծացմանը զուգընթաց հնարավոր կոնֆորմացիաների թիվն աճում է: Մ-ի դեֆորմացվելու ունակությունը բնորոշում են կոնֆորմացիաների հավաքածուով, որը կոչվում է վիճակագրական կշիռ կամ կոնֆորմացիայի էնտրոպիա: Քիմիական էներգիան մեխանիկականի փոխարկելու Մ-ի ունակությունը կապված է կոնֆորմացիայի էնտրոպիայի հետ: Շղթայի երկարությամբ տարբեր մոնոմերային օղակների բաշխվելու հնարավոր տարատեսակների թիվը պայմանավորում է Մ-ի կոնֆիգուրացիայի էնտրոպիան (կենսապոլիմերների համար օգտագործում են նաև կոնֆիգուրացիոն ինֆորմացիա տերմինը): Այդ մեծության բացասական արժեքը այն ինֆորմացիայի չափն է, որը կարող է պարունակվել Մ-ում: Ինֆորմացիա պահելու ունակությունը Մ-ի

կարևորագույն հատկանիշն է, որը, մասնավորապես, պայմանավորում է ժառանգական ինֆորմացիայի ծածկագրումը *նուկլեինաթթուներում* (*կոդ գենետիկական*): Կոնֆիգուրացիայի էնտրոպիայի հետ է կապված Մ-ի կայուն ե ր կ ր ո ր դ ա յ ի ն մ ո լ ե կ ու լ ա յ ի ն կ առ ու ց վ ա ծ ք ն ե ր առաջացնելու ունակությունը: Կարևորագույն կենսապոլիմերների՝ սպիտակուցների և նուկլեինաթթուների Մ-ում այդ կառուցվածքները կատարյալ են և պայմանավորում են դրանց յուրահատկությունները (տես *Ֆերմենտներ*): Սինթետիկ համապոլիմերներում ե ր կ ր ո ր դ ա յ ի ն մ ո լ ե կ ու լ ա յ ի ն կ առ ու ց վ ա ծ ք ն ե ր ը Մ-ի կողմից ինֆորմացիան հիշելու ունակության պարզագույն օրինակ է:

*Լ. Գյուլբուդաղյան*

**ՄԱԿՐՈՌԵԼԻԵՖ** (<*մակրո...* և *ռելիեֆ*), ցամաքի, օվկիանոսների ու ծովերի հատակի ռելիեֆի խոշոր ձևեր, բարձրությունների մի քանի հարյուր *մ*-ից մինչև մի քանի hզ. *մ* տատանումներով (լեռնաշղթաներ, միջլեռնային իջվածքներ, դաշտավայրեր ևն):

**ՄԱԿՐՈՔԻՄԻԱԿԱՆ ԱՆԱԼԻԶ**, մ ա կ ր ո ք ի մ ի ա կ ա ն վ ե ր լ ու ծ ու թ յ ու ն, քիմիական անալիզի եղանակ, որը պահանջում է հետազոտվող նյութի (0,1 *գ*-ից ավելի) և օգտագործվող լուծույթների (1 *մլ*-ից ավելի) մեծ քանակներ: Անվանումըն առաջացել է ի հակադրություն անալիզի ավելի ժամանակակից եղանակի՝ *միկրոքիմիական անալիզի*, որը պահանջում է $10^{-4}$ —$10^{-3}$ *գ* հետազոտվող նյութ:

**ՄԱԿՐՈՖԱԳԵՐ** (< *մակրո...* և հուն. φάγος — խժռող, լափող), կենդանական օրգանիզմում գտնվող մեզենքիմային բնույթի բջիջներ, որոնք ընդունակ են ակտիվորեն բռնել ու մարսել (տես *Ֆագոցիտոզ*) բակտերիաները, մահացած բջիջների մնացորդները և օրգանիզմի համար թունավոր ու օտար այլ մասնիկներ: «Մ.» տերմինն առաջարկել է Ի. *Մեչնիկովը* (1892): Մ. են արյան մոնոցիտները, շարակցական հյուսվածքի հիստիոցիտները, արյունաստեղծ օրգանների մազանոթների էնդոթելային բջիջները, լյարդի, թոքերի որոշ բջիջներ ևն: Կաթնասուն կենդանիների Մ-ի նախորդները գոյանում են ոսկրածուծում: Ակտիվ ֆագոցիտային հատկությամբ են օժտված նաև արյունաստեղծ օրգանների ցանցանման հյուսվածքի բջիջները, որոնք Մ-ի հետ համախմբվում են ռետիկուլո-ցանցանման համակարգում և օրգանիզմում կատարում պաշտպանական ֆունկցիա:

**ՄԱԿՐՈՖԱՈՒՆԱ**, երկրաբանության մեջ կենդանական աշխարհի այն բրածո մնացորդների ամբողջությունը, որոնց համակարգային պատկանելությունը որոշելու համար չի պահանջվում օգտագործել օպտիկական միջոցներ (մանրադիտակ, բինոկուլյար ևն): Տերմինը չի համապատասխանում օրգանիզմների որևէ բնական խմբի, չունի համակարգային նշանակություն. Նրա ծավալն անորոշ է և փոխվում է *հնէաբանության* մեջ կիրառվող մեթոդների զարգացման հետ: Տերմինի օգտագործումը ենթադրում է մակրո- և միկրոֆաունայի գոյությունը, որը ճիշտ չէ, քանի որ ֆաունան միասնական է: «Մ.» տերմինը խորհուրդ չի տրվում գործածել:

**ՄԱԿՈՒ** (Զենգիմար, վերին հոսանքում՝ Կըզըլչայ), գետ Հայկական լեռնաշխարհում, Արաքսի աջ վտակը: Երկարությունը մոտ 125 *կմ* է: Սկիզբ է առնում Կոտուր լեռնաշղթայի արևելյան լանջերից, մոտ 3000 *մ* բարձրությունից, թափվում Արաքսի մեջ: Վերին հոսանքում հոսում է V-նման ձորերով, ստորին հոսանքում՝ հարթավայրով, առաջացնելով գետադարավանդներ: Սնումը խառն է: Հորդանում է մարտի վերջին, վարարում՝ աշնանը: Մ-ի ափին է Մակու բերդը:

**ՄԱԿՈՒ**, բերդաքաղաք Մեծ Հայքի Վասպուրական նահանգի Արտազ գավառում, Փոքր Մասիսից հարավ: Ենթադրվում է, որ հնագույն շրջանում կոչվել է Շավարշան կամ Շավարշական: Ըստ երևույթին, եղել է Ամատունի նախարարության իշխանանիստը: Ավանդության համաձայն, Մ-ի մոտ է նահատակվել Հայաստանում քրիստոնեության քարոզիչներից Թադեոս առաքյալը, որի պատվին հետագայում Մ-ից 20 *կմ* հվ-արլ. հիմնվել է Ս. Թադեոսի վանքը: XIII—XV դդ. Մ. ամրոցը, իր անառիկ միջնաբերդով, եղել է Արտազի հայկ. իշխանության (տես *Մակուի հայկական իշխանություն*) նստավայրը: XVII—XIX դդ. այնտեղ նստել են Բայաթ ցեղի առաջնորդները: XVIII դ. 1-ին կեսից՝ խանության կենտրոն: XX դ. սկզբին Մ. ուներ 240 տուն (1400 շունչ) հայ բնակիչ: Զբաղվում էին խաղողամշակությամբ, գինեգործությամբ, մասամբ՝ արհեստներով: 1918-ին, երբ թուրք. զորքը ներխուժեց Ատրպատական, Մ-ի հայերը բնաջնջվեցին, փոքրաթիվ հայերի հաջողվեց հեռանալ այլ շրջաններ:

Այժմ՝ նույն անունով քաղաք Իրանում:

*Գրկ.* Մ ա մ յ ա ն Ն., Ատրպատականի հայոց թեմը, Րաֆֆի տարեգիրք, Ա տարի, Թեհրան, 1969:

**ՄԱԿՈՒԻ ԴԱՇՏ**, գտնվում է Հայկական լեռնաշխարհում, Միջին-Արաքսյան գոգավորությունում, Արաքս գետի աջ ափին: Կազմում է Նախիջևանի հարթավայրի արմ. շարունակությունը: Բարձրությունը 800—1100 *մ* է: Բաժանվում է լավային դաշտի, այլուվիալ և նախալեռնային փոքրաթեք հարթությունների: Լավային դաշտը կազմված է Փոքր Մասիսից սկիզբ առնող բազալտային, անդեզիտա-բազալտային լավային հոսքից և զբաղեցնում է Մ. դ-ի հս. մասը, ալյուվիալ հարթությունը՝ կենտրոնական մասը, որը դեպի արլ. լայնանում է և ձուլվում Նախիջևանի դաշտին: Նախալեռնային թեք հարթությունը կազմված է նեոգենի գիպսաբեր ու աղաբեր շերտախմբերից և ենթարկվել է էրոզիոն խիստ մասնատման: Այն դեպի հվ. աստիճանաբար բարձրանում է և ձուլվում Շավարշավանի լեռնաշղթային: Կլիման չոր ցամաքային է՝ շոգ ամառով և չափավոր ցուրտ ձմեռով: Մակերևութային հոսքը սակավ է, միակ խոշոր գետը Մակուն է: Կան հանքային աղբյուրներ: Տարածված են գորշ հողերը: Պատահում են նաև ալկալի և աղուտային հողեր: Բուսականությունը կիսաանապատային է: Զարգացած է այգեգործությունը:

**ՄԱԿՈՒԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆ**, Ա ր տ ա զ ի հ ա յ կ ա կ ա ն ի շ խ ա ն ու թ յ ու ն, ստեղծվել է XIII դ. կեսին, Վասպուրականի Արտազ գավառում: Իշխանանիստն էր Մակու քաղաքը: Օգտվելով Կիլիկյան Հայաստանի և մոնղ. պետության միջև կնքված դաշնագրով (1254) քրիստոնյաներին ընձեռած հնարավորություններից, Արտազի Ս. Թադեոսի վանքում նստող եպիսկոպոսների տոհմն իր ձեռքում կենտրոնացրել է նաև գավառի աշխարհիկ իշխանությունը: Արտազի կիսանկախ իշխանության տերերը (պարոնտեր, եպիսկոպոս Զաքարիան, նրա եղբայր Պետրոսը) XIII դ. 2-րդ կեսին ամրացրել են Մակուի բերդը, կառուցել կամուրջներ, կարգի բերել ճանապարհները, հիմնել վանքեր (այդ թվում՝ Տորձորի Ս. Աստվածածին վանքը՝ Մակուից 20 *կմ* հվ.): Արտազի հայ ավատատերերը, քաղաքային բնակչության որոշ խավեր, հավատալով Եվրոպայից օգնություն ստանալու սին խոստումներին, ընդունել են կաթոլիկություն: Մ. հ. ի-յան մշակութային կենտրոն Տորձորի վանքում Հովհաննես Տորձորեցի րաբունապետի ու նրա հետնորդների ջանքերով հիմք է դրվել հայ ունիթոռական գրականությանը, թարգմանվել են կաթոլիկ հեղինակների գործեր ևն: Օտար նվաճողների դեմ անհավասար կռիվներում Մ. հ. ի. թուլացել է: XIV դ. վերջին այն հաջող դիմադրություն է ցույց տվել Լենկթեմուրին, սակայն Մ. հ. ի-յան տեր Նուր ադ Դին իշխանը ստիպված ընդունել է նրա գերիշխանությունը: Մ. հ. ի-յանը վերջ է տվել Կարակոյունլու Իսքանդարը՝ 1426-ին:

*Գրկ.* Խ ա չ ի կ յ ա ն Լ., Արտազի հայկական իշխանությունը և Տորձորի դպրոցը, «ԲՄ», № 11, 1973: *Վ. Վարդանյան*

**ՄԱՀ**, օրգանիզմի կենսագործունեության ընդհատում. բջիջներում և հյուսվածքներում կենսաբանական պրոցեսների անվերադարձ կանգ, անհատի՝ որպես առանձին կենդանի համակարգի վախճան, որն ուղեկցվում է *կյանքի* կառուցվածքային հիմքը հանդիսացող սպիտակուցների և այլ կենսապոլիմերների քայքայմամբ: Միաբջիջ օրգանիզմների բնական Մ. դրըսևորվում է կիսման ձևով, քանի որ այն կապված է տվյալ անհատի գոյության դադարի և նրա փոխարեն երկու նոր անհատների առաջացման հետ: Երբեմն առանձնացվում է մասնակի Մ. հասկացությունը (տես *Մեռուկացում*): Բարձրակարգ կենդանիների և մարդու մոտ, կախված Մ. առաջացնող պատճառներից, տարբերում են բ ն ա կ ա ն կամ ֆ ի զ ի ո լ ո գ ի ա կ ա ն Մ., որը տեղի է ունենում օրգանիզմի *ծերացման*, հիմնական կենսական ֆունկցիաների երկարատև, աստիճանաբար զարգացող մարման հետևանքով, և վաղաժամ կամ ա խ տ ա բ ա ն ա կ ա ն Մ., որը վրա է հասնում հիվանդություններին կամ կենսական կարևոր օրգանների (ուղեղ, սիրտ, թոքեր, լյարդ ևն) վնասման պատճառով: Արագ զարգացող (մի քանի վայրկյանի կամ րոպեի ընթացքում) ախտաբանական պրոցեսի հետևանքով առաջացած Մ. կոչվում է ա ր ա գ ա հ ա ս (հանկարծամահություն): Եթե Մ. դժբախտ պատահարի, սպանության կամ ինքնա-

պանության հետևանք է, կոչվում է բոնի Մ.: Տարբերում են տաքարյուն կենդանիների և մարդու Մ-վան երկու փուլ՝ կ լ ի ն ի կ ա կ ա ն և կ ե ն ս ա բ ա ն ա կ ա ն: Կլինիկական Մ-վան ժամանակ շնչառությունը և սրտի գործունեությունը ընդհատվում են, սակայն հյուսվածքները դեռ չեն քայքայվում, և հնարավոր է օրգանիզմի կենսական ֆունկցիաների լիարժեք վերականգնումը: Կլինիկական Մ-վան շրջանին, որի տևողությունը սովորաբար 5—7 *ր* է, հետևում է կենսբ. Մ.՝ բջիջներում և հյուսվածքներում ֆիզիոլոգիական պրոցեսների անդարձելի դադարը: Մ-վան պրոցեսների ուսումնասիրությամբ զբաղվում է թ ա ն ա տ ո լ ո գ ի ա ն (մահաբանությունը):

*Գրկ.* Ильин Н. А., Современная наука жизни и смерти, Кишинев, 1955.

**«ՄԱՀԱԲՀԱՐԱԹԱ»** (սանսկրիտ. «Աւր մեծ Բհարաթաների մասին»), Հնդկաստանի ժողովուրդների էպոսը: Հիմքը Հս-Արմ. և Հս. Հնդկաստանի ժողովուրդների ու ցեղերի բանավոր ասքերն ու առասպելներն են: Սկզբնավորվել է մ. թ. ա. II հազարամյակի 2-րդ կեսին: Այժմյան տեսքն ստացել է մ. թ. I հազարամյակի կեսերին: Կարծիք կա, որ «Մ.»-ի նախնական պատումը ստեղծվել է պրակրիտով, այնուհետև՝ միայն *սանսկրիտով*: էպոսը պատմում է Հաստինապուրայի (այժմ՝ Դելի) տիրապետության համար երկու տոհմերի ու նրանց դաշնակիցների ճակատամարտի մասին: «Մ.» բաղկացած է 18 գրքից, մի քանի միջանկյալ էպիկական ասքից և բանահյուսական բնույթի շատ ասքերից ու առասպելներից («Շակունտալայի պատմությունը», «Աւր Ռամայի մասին», «Մատսյայի պատմությունը», «Շիվա արքայի պատմությունը», «Բհագավադգիթա» փիլ. պոեմը ևն): «Մ.» սյուժեների ու կերպարների հարուստ աղբյուր է եղել Հնդկաստանի, Ինդոնեզիայի, Բիրմայի, Կամբոջայի, Թաիլանդի, Շրի Լանկայի ժողովուրդների ազգային գրականության համար, արտացոլվել է նաև Տիբեթի ու Մոնղոլիայի գրականության մեջ: Եվրոպայում «Մ.» հայտնի է դարձել XVIII դ. վերջերից (անգլ., գերմ., ռուս.): Մինչև 1948-ը էպոսի լիակատար թարգմանությունը եղել է միայն անգլ.: 1950—67-ին ռումբենով հրատարակվել է «Մ.»-ի երեք գիրքը: Էպոսի ուսումնասիրության գործում զգալի ավանդ ունեն եվրոպացի գիտնականներ Ֆ. Բոպպը, Լ. Շրյոդերը, Խ. Լաասենը, Ս. Սորենսենը, Գ. Բյուլերը, հնդիկ Վ. Ս. Սուքթանկարը և ուրիշներ:

**ՄԱՀԱԼ** (արաբ. մա՛հա՛լ—վայր, տեղ բառի հոգնակին է, համապատասխանում է գավառ բառին), XIV—XVIII դարերում վարչական միավոր Իրանում և նրան ենթակա երկրներում, այդ թվում՝ Արևելյան Հայաստանում: Վարչ. խոշոր միավորները՝ վիլայեթները, խանությունները ու բեգլերբեգությունները, բաժանված էին Մ-ների կամ նահիեների: Մ. կառավարել է բեկի տիտղոսով միրբոլուքը, որը համարվել է *բեգլերբեգիի* փոխանորդը (նաիբ): Այն Մ-ներում, որտեղ ժառանգաբար իշխել են տեղական ֆեոդ. տների ներկայացուցիչները, առանձին վարչակարգ էր հաստատված, որով միրբոլուքի կամ նաիբի ֆունկցիաները վերապահված էին տեղական ֆեոդալին կամ մելիքին (օրինակ՝ Արցախի Խաչեն, Գյուլիստան, Վարանդա, Ջրաբերդ, Դիզակ Մ-ների միրբոլուքները հայ մելիքներն էին): XVIII դ. 30-ական թթ. Նադիր շահի հրամանով Արցախի այդ Մ-ները միավորվեցին, ըստեղծվեց «մահալ-ե խամսե» («հինգ Մ-ներ», *Խամսայի մելիքություններ*) կոչվող հայկ. ինքնավար երկրամասը:

*Գրկ.* Шопен И., Исторический памятник состояния Армянской области в эпоху её присоединения к Российской империи, СПБ, 1852. *Հ. Փափազյան*

**ՄԱՀԱՄՈՐՄ** (Atropa), շ ի կ ա տ ա կ, մորմազգիների ընտանիքի բազմամյա թունավոր խոտաբույսերի ցեղ: Ցողունը կանգուն է, 0,6—2 *մ* բարձրությամբ, ծաղիկները մեկական են, կախված, սովորաբար՝ դարչնամանուշակագույն կամ կարմրագորշ: Տերևները մուգ կանաչ են, խոշոր, ձվաձև, ամբողջաեզր, հերթադիր, պտուղը սև, փայլուն հատապտուղ է: Հայտնի է Մ-ի 4, ՍՍՀՄ-ում՝ 2 տեսակ: ՀՍՍՀ անտառային շրջաններում (Իջևան, Շամշադին, Կիրովական, Ղափան ևն) ծովի մակերևույթից 700—1800 *մ* բարձրության վրա հանդիպում է կովկասյան Մ.: Մ. արժեքավոր դեղաբույս է, բոլոր մասերը պարունակում են ալկալոիդներ (4—6%), ատրոպին, հիոսցիամին, բազմաթիվ այլ արժեքավոր նյութեր՝ ապորգին մեթիլ վիսկուլին, սաթաթթու ևն: Տերևների և արմատների մզվածքը և թուրմը օգտագործվում է ստամոքսի խոցի, բրոնխիալ ասթմայի, պարկինսոնյան հիվանդության ևն բուժման համար: Մ-ի սխալ օգտագործումը կարող է թունավորումների, նույնիսկ մահվան պատճառ դառնալ:

**ՄԱՀԱՊԱՏԻԺ**, պատժի ամենախիստ տեսակը: ՍՍՀՄ օրենսդրությամբ կիրառվում է գնդակահարության, կապիտալիստական երկրներում նաև՝ կախաղանի, խեղդամահ անելու, էլեկտրական աթոռի, գազախցիկի միջոցով: ՍՍՀՄ-ում Մ. կիրառվում է որպես ժամանակավոր հարկադիր միջոցառում՝ պետ. որոշ հանցագործությունների (*հայրենիքի դավաճանություն, լրտեսություն*), առանձնապես վտանգավոր մի քանի ընդհանուր հանցագործությունների (ծանրացնող հանգամանքներում կատարված դիտավորյալ սպանություն, առանձնապես խոշոր չափերով սոցիալիստական սեփականության հափշտակություն ևն) դեպքերում, պատերազմի ժամանակ զինծառայությունից խուսափողների, պետի հրամանը կատարելուց հրաժարվողների, դասալիքների նկատմամբ ևն: Մ. չի կարող կիրառվել 18 տարին չբոլորած անձանց, հանցագործության կատարման, դատավճիռ արձակելու կամ ի կատար ածելու պահին հղի կանանց նկատմամբ: Մ. նախատեսող հանցագործությունների վերաբերյալ գործերը ընդդատյա են միութենական, ինքնավար հանրապետությունների գերագույն դատարաններին, երկրամասային, մարզային, մի շարք քաղաքների (Մոսկվա, Լենինգրադ, Տաշքենդ ևն) քաղաքային դատարաններին, ինքնավար մարզերի և ինքնավար օկրուգների դատարաններին, զինվորական տրիբունալներին, ՍՍՀՄ Գերագույն դատարանի զինվորական կոլեգիային: Մ. լայնորեն կիրառվել է ստրկատիրական և ֆեոդալական հասարակարգերում, երբեմն՝ ամենադաժան ձևերով (հրկիզում, քարկոծություն, խաչհանում, քառահատում, անվահարում, ջրահեղձում ևն): Հայոց կանոնագրքում, Մխիթար Գոշի և Սմբատ Սպարապետի դատաստանագրքերում Մ-ի որոշ տեսակներ նախատեսված էր կիրառել պետ., կրոնական, անձի և սեփականության դեմ ուղղված ծանրագույն հանցագործությունների դեպքերում: Արևմտյան Եվրոպայի և Լատինական Ամերիկայի մի շարք երկրներում Մ. վերացված է: *Ս. Թովմասյան*

**ՄԱՀԱՌԱՋԱ** (սանսկրիտ., բառացի՝ մեծ կառավարիչ, մեծ իշխան), մ ա հ ա ր ա ն ա, մ ա հ ա ր ա ն, Հնդկաստանում, միջին դարերում, անկախ իշխանությունների կառավարիչների տիտղոս, որը պահպանվել է նոր և նորագույն շրջանում: 1956-ին Մ. և այլ տիտղոս կրող իշխանները զրկվել են քաղ. իշխանությունից:

**ՄԱՀԱՐԱՇՏՐԱ**, նահանգ Հնդկաստանում, Հնդստան թերակղզու հյուսիս-արևմուտքում: Տարածությունը 308 հզ. *կմ*² է, բնակչությունը՝ 55,2 մլն (1975), վարչական կենտրոնը՝ Բոմբեյ: Ընդգրկում է Դեկանի սարահարթի հս-արմ. մասը, Արևմտյան Գաթերի լեռնային գոտին և Արաբական ծովափնյա նեղ դաշտավայրը: Կլիման մուսսոնային է: Դեկանի սարահարթի տրապների վրա զարգացած են բերրի սևահողեր (ռեգուրներ): Բնակչության ավելի քան 60%-ը զբաղված է գյուղատնտեսությամբ: Բամբակի բերքահավաքով Մ. առաջինն է: Մշակում են գետնընկույզ և այլ յուղատուներ, շաքարեղեգ, հացահատիկային կուլտուրաներ (ջովար, ցորեն, բրինձ ևն): Մ. Հնդկաստանի առավել զարգացած արդ. նահանգ է: Նրան բաժին է ընկնում վերամշակող արդյունաբերության արտադրանքի 25%-ը: Առաջատար ճյուղը բամբակեղենի արդյունաբերությունն է: Զարգացած են նաև տեքստիլ արտադրության այլ ճյուղերը և սննդի արդյունաբերությունը, նահանգի արլ-ում՝ լեռնահանքային արդյունաբերությունը: Կա մեքենաշինություն, քիմ. և նավթաքիմ. արդյունաբերություն: Արդյունահանվում է մանգանի հանքանյութ, քարածուխ: Տարապուրում գործում է Հնդկաստանի առաջին ԱԷԿ-ը:

**ՄԱՀԱՐԻ** Գուրգեն [իսկականը՝ Աճեմյան Գուրգեն Գրիգորի, 1(14).8.1903, Վան—16.7.1969, Պալանգա (Լիտվական ՍՍՀ), թաղված է Երևանում], հայ սովետական գրող, ՀՍՍՀ կուլտուրայի վաստ. գործիչ (1965): Նախնական կրթությունն ստացել է ծննդավայրում, 1915-ից ապաստանել է Դիլիջանի ու Երևանի որբանոցներում: Սովորել է Երևանի համալսարանի պատմա-գրական ֆակուլտետում: 1918-ից բանաստեղծություններ է տպագրել «Աշխատանք», «Վան-Տոսպ» և այլ թերթերում: Մ-ու որոնումների շրջանին են վերաբերում «Տիտանիկ» (1924), «Երկու պոեմ» (1926), «Բարդիներ» (1927) և այլ գրքույկներ: Մ-ուն գրական ճանաչում բերեց «Մրգահաս» (1933) ժողովածուն, որտեղ, բանաստեղծություններից բացի, զետեղված էին նաև բալլադներ ու պոեմներ՝ հայ-


Գ. Գ. Մահարի

բենիքի, սիրո, ազգային արժեքների, բնության ու ժողովրդի մասին: Հեղափոխական անցյալին, նրա անվանի և անանուն հերոսներին են նվիրված «Կարմիր ձիավորի մահը» (1927, փոխադրություն), «Բալլադ մի ռուս զինվորի մասին», «Բալլադ Բաքվի և քսանվեցի մասին», «Արնախեղդ վարդեր» (1929), «Վերջին մայիսը» (1929—1930) բալլադները:

Մ. արձակ սկսել է գրել 1920-ական թթ. վերջերից: 1929-ին լույս է տեսել նրա «Սիրո, խանդի ու Նիցցայի պարտիզաններին մասին» պատմվածքների ժողովածուն, որտեղ իշխող մոտիվը հին ու նոր հոգեբանությունների բախումն է՝ բեկված սիրո, ընտանիքի, մարդկային փոխհարաբերությունների մեջ: «Զիգզագներում» (1931) ժողովածուն շարունակում է նախորդ գրքում սկսած զրույցը նոր մարդու կերպարի և նոր հարաբերությունների շուրջը: 1930-ին Մ. հրատարակեց իր կենսագրական եռերգության առաջին երկու գրքերը, իսկ 1956-ին՝ երրորդ գիրքը: Գրողը կենդանի պատկերներով ու կերպարներով ներկայացնում է Հայաստանը իր պատմության ճակատագրական ժամանակաշրջանում՝ առաջին համաշխարհային պատերազմի նախօրեին («Մանկություն»), պատերազմի, հայկ. կոտորածների ու բռնագաղթի տարիներին («Պատանեկություն») և, վերջապես, հեղափոխության օրերին («Երիտասարդության սեմին»): Պատմական այս ֆոնի վրա տրված է հայ մանուկի, դեռահասի, ապա՝ պատանու կյանքը, որը միահյուսվում է հայրենիքի ու ժողովրդի ճակատագրի հետ:

1950-ական թթ. Մ-ու ստեղծագործությունն ստացավ նոր թափ: Լույս տեսան «Հնձաններ» (1959) բանաստեղծությունների, «Լռության ձայնը» (1962) պատմվածքների ժողովածուները և «Այրվող այգեստաններ» (1966) վեպը: Վավերագրական հարուստ նյութի հիման վրա վեպում պատկերված է հայ ժողովրդի արևմտյան հատվածներից մեկի՝ Վանի հայության իրավիճակը առաջին համաշխարհային պատերազմին նախորդող տարիներին և տեղահանության ու զաղթի ժամանակաշրջանում: Մ. գրել է նաև «Չարենց Նամե» (1968) և «Այս հուտ, հանճարեղ լռեցին» (1971) դիմանկարային-հուշագրական գրքերը:

Մ-ու լեզուն հարուստ է, պատկերավոր, ոճը՝ ինքնատիպ, որին ներհատուկ են ողբերգականի ու երգիծականի միահյուսումը, ջերմ քնարականությունն ու մեղմ հումորը: Մ-ու գործերը թարգմանվել են ռուս. և այլ լեզուներով:

*Երկ.* Երկ. ժող., հ. 1—4, Ե., 1966—79:

*Գրկ.* Աղաբաբյան Ս., Գուրգեն Մահարի, Ե., 1959: Արզումանյան Ս., Սովետահայ վեպը, Ե., 1967, էջ 324—347: Աղաբեկյան Կ., Գուրգեն Մահարի, Ե., 1975: Աղալյան Ն., Քննադատության ժամանակը, Ե., 1977, էջ 97—119: Բողոսյան Մ., Գուրգեն Մահարի, Ե., 1980: *Ս. Բողոսյան*

**ՄԱՀԱՐՁ** (այժմ՝ Մարջանսու), գետ Իրաքում, Մեծ Զավ գետի ձախ վտակը: Երկարությունը մոտ 100 *կմ* է: Սկիզբ է առնում Զագրոսի շղթայի Բոզդաղ լեռնազանգվածի հվ-արմ. լանջից, մոտ 2800 *մ* բարձրությունից: Սնումը ձնաանձրևային է, հորդացումը՝ գարնանը:

**ՄԱՀԱՐՁԱՆ**, քանդակագործական ստեղծագործություն կամ ճարտարապետական փոքր հորինվածք, որը դրվում է մահացածի գերեզմանին՝ նրա հիշատակը հավերժացնելու նպատակով: Նոր քարի դարի մշակույթում Մ-ները փայտե սյուներ էին, *մենհիրներ*, Հին Հունաստանում՝ արձաններ, *ստելաներ*: Վաղ միջնադարյան Եվրոպայում, ժողովուրդների մեծ գաղթի շրջանում քրիստոնեության տարածումով հարթաքանդակներով ստելաները փոխարինվել են խաչերով: XI դարից Արևմտյան Եվրոպայում Մ-ի հիմնական տիպ է դարձել պատվանդանը (ննջեցյալի քանդակազարդ պատկերը կրող սալիկով ծածկված քարե կամ բրոնզե դատարկ արկղ՝ սովորաբար եկեղեցու ներսում): Միջնադարյան Կովկասում տարածում են գտել քանդակազարդ շիրմաքարերը: Չին. Մ-ները (փորագրված անուններով ուղղաձիգ սալեր) աստիճանաբար փոխարկվել են հուշապատերի: Վերածննդի շրջանում հիմնականում կառուցվել են դամբարաններ: XVII—XVIII դդ. Մ-ներում դիմաքանդակները հաճախ համադրվել են այլա-

Մահարձան. 1. Ն. Շիրվանյան. «Եղիցի լույս», Սերոբ Շիրվանյանի մահարձանը, տուֆ (1978, Երևանի Կարմիր բլուրի գերեզմանատուն), 2. Հ. Զիվանյան. նկարիչ Մինաս Ավետիսյանի մահարձանը, տուֆ (1977, Երևանի քաղաքային գերեզմանատան պանթեոն), 3. Ա. Սարգսյան. «Լուռ վիշտ», ճեղինակի մահարձանը, գրանիտ (1971, Երևանի քաղաքային գերեզմանատան պանթեոն), 4. Ա. Տ. Մատվեև. Վ. Է. Բորիսով-Մուսատովի մահարձանը Տարուսայում, ՌՍՖՍՀ Կալուգայի մարզում, գիպսե կրկնօրինակ (1910, Ռուսական թանգարան, Լենինգրադ)






բանական ֆիգուրների հետ. կարևոր նշանակություն են ձեռք բերել *տապանագրերը*: XVIII դ. վերջին և XIX դ. սկզբին Մ-ները տեղադրվել են ոչ թե եկեղեցիներում, այլ գերեզմանոցում, որոնք վեր են ածվել Մ-ի յուրօրինակ թանգարանների: XIX դ. 2-րդ կեսին և XX դ. գերեզմանի միակ հարդարանքը դարձել է դիմաքանդակը և լակոնիկ հուշախորհրդապատկերը:

Հին և միջնադարյան Հայաստանում Մ-ներ են եղել մենհիրները, *կոթողները*, *դամբարանները*, *խաչքարերը*, *տապանաքարերը*: Խաչքարերը XVIII դ. վերջից իրենց տեղը զիջել են *հուշարձանին*: XIX դ. և XX դ. սկզբին Մ. առավելապես հանդես է եկել քանդակային ձևերի գերակշռությամբ (ինչպես կլոր, այնպես ռելիեֆային): Սովետական շրջանում Մ-ի տարածված տեսակներ են դիմաքանդակները, արձանները, տապանաքարերի նոր ձևերը, ինչպես և դրանց հիմքի վրա ստեղծված խորհրդանշական քանդակաձևերը:

*Գրկ.* Բարխուդարյան Ս. Գ., Հայաստանի կոթողային հուշարձանները, «Տեղեկագիր ՀՍՍՀ ԳԱ, հաս. գիտ.», 1960, № 7—8:

**ՄԱՀԴԻԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆ** Սուդանում, զինված ապստամբություն թուրք-եգիպտական իշխանությունների և անգլիական գաղութարարների դեմ 1881—1898-ին: Շարժման գաղափարախոսն ու ղեկավարը հոգևոր քարոզիչ Մոհամմեդ Ահմեդն էր (1848—85), որը հավասարության, եղբայրության, իսլամը այլասերող թուրքերի և եգիպտացիների դեմ պայքարի քարոզով հիմնադրեց Անսարիների եղբայրությունը (1870): Իրեն «մահդի» (մեսիա, փրկարար) հռչակելով (1881)՝ Մ. Ահմեդը ղեկավարեց ազգային-ազատագրական ժող. ապստամբությունը, որի շարժիչ ուժերն էին գյուղացիությունը, արհեստավորները, քոչվորները, ստրուկները: Հաղթելով անգլ. և թուրք-եգիպտական պատժիչ զորքերին՝ մահդիականները Սուդանում ստեղծեցին Մահդիական պետություն (1885): Մահդիի մահից հետո (խալիֆա էր Աբդալլա իբն աս Սաիդ Մոհամմեդը) մահդիական վերնախավի (որ վերածել էր սեփական ժողովրդին շահագործող դասի) դեմ սկսված ժող. հուզումների և ներքին երկպառակությունների պայմաններում, 1896-ին Սուդանի դեմ վերսկսվեց անգլո-եգիպտական զինված ինտերվենցիան: 1898-ին Օմդուրմանի ճակատամարտում մահդիականները պարտվեցին, որի հետևանքով Սուդանը դարձավ (1899) անգլ. գաղութ:

*Ե. Նազարյան*

**ՄԱՀԵ** (Mahe) Ժան-Պիեռ Հանրի Մարի (ծն. 21.3.1944, Փարիզ), ֆրանսիացի արևելագետ-հայագետ: 1967-ին ավարտել է Սորբոնի համալսարանի բանասիրական ֆակուլտետը: 1970—75-ին զուգահեռաբար աշակերտել է արևելագետ-հայագետներ Ժ. Մեռնիին, Շ. Մերսիեին, Ֆ. Ֆեյդիին: 1975—77-ին ֆրանս. է դասավանդել Երևանի համալսարանում, Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանում զբաղվել գիտական-բանասիրական աշխատանքով: 1977-ից Սորբոնի համալսարանի արևելյան լեզուների և քաղաքակրթությունների ինստ-ի հայագիտության ամբիոնի վարիչն է, հին արլ. լեզուների դպրոցի հայոց լեզվի դասախոսը և «Ռևյու դեզ էտյուդ արմենիեն»-ի («Revue des études arméniennes») գլխավոր խմբագիրը: Զբաղվում է հայերեն հին ձեռագրերի՝ գրաբարից ֆրանս. թարգմանությամբ («Հերմեսյ Եռամեծի առ Ասկղեպիոս սահմանք», հուն., պտտիերեն, լատ. աղբյուրների համեմատությամբ և ծանոթագրություններով, 1976), միջնադարյան Հայաստանի պատմության, հայ գրականության ու հայերենի քերականության հարցերով:

*Խ. Կարաղեյյան*

**ՄԱՀԵՎԱՆՅԱՆՆԵՐ**, իշխանական տոհմ Սյունիքում: Նրա ներկայացուցիչներից Մահևանը XI դ. վերջին Սյունյաց Սենեքերիմ թագավորի ազատներից էր: 1166-ին սելջուկների հարձակումների պատճառով Մ. տեղափոխվեցին Անի: Սյունիք վերադարձան Զաքարյանների օրոք: Մ. Իվանե աթաբեկից, իբրև հայրենիք, ստացան Նորբույն բերդը և ագարակներ՝ Վայոց ձորի արմ. կողմում: Մ-ի վերջին ներկայացուցիչներից էին Զուրջեանց թոռ Մահևանը և Ամիրան:

*Ռ. Մաթևոսյան*

**ՄԱՀԹՈՒՄԿՈՒԼԻ** (կեղծանունը՝ Ֆրագի, ծն. և մահ. թթ. անհտ.), XVIII դ. թուրքմեն բանաստեղծ: Մ-ից մեզ է հասել 10 հզ. չափածո տող: Նրա քաղաքացիական պոեզիան դատապարտում է միջցեղային երկպառակությունները, ընչազուրկներին կոչ է անում մտածել գոյության պայքարի մասին, մերկացնում է հոգևորականությանը: Մ. մեծ ազդեցություն է գործել թուրքմ. պոեզիայի զարգացման վրա:

*Երկ.* Избранное, М., 1960.

**ՄԱՀԼԵՐ** (Mahler), Գուստավ (1860—1911), ավստրիացի կոմպոզիտոր և դիրիժոր: 1875—78-ին սովորել է Վիեննայի կոնսերվատորիայում: Դիրիժորական աշխատանքն սկսել է 1880-ից: Եղել է Բուդապեշտի (1888—91), Համբուրգի (1891—1897), Վիեննայի (1897—1907) օպերային թատրոնների գլխավոր դիրիժոր և տնօրեն, Նյու Յորքի «Մետրոպոլիտեն-օպերայի» (1908—09) և ֆիլհարմոնիկ նվագախմբի (1909—11) դիրիժոր: Մ. դիրիժորի գործունեությունը դարագլուխ է եղել երաժշտական թատրոնի պատմության մեջ: Գրել է 9 սիմֆոնիա (1888—1909, տասներորդը անավարտ է), «Երգ երկրի մասին», սիմֆոնիա-կանտատը մեներգիչների և նվագախմբի համար (1908), երգաշարեր նվագախմբի ընկերակցությամբ՝ «Թափառական ենթավարպետի երգերը» (խոսք՝ Մ-ի, 1884), «Տղայի կախարդական եղջերափողը» (1895), «Երգեր մահացած երեխաների մասին» (1904) ևն: Գիտակցելով ժամանակի սոցիալական հակասությունները՝ Մ. ձգտել է երաժշտության միջոցով դիմել լայն զանգվածներին, մերկացնել կյանքի արատավոր կողմերը, պայքարել անարդարության դեմ: Սիմֆոնիաներում օգտագործել է նվագախմբի մեծ կազմ, երբեմն նաև մեներգիչներ, երգչախումբ: Փիլ. և քնարական կերպարների կողքին սիմֆոնիաներում տեղ են գտել ողբերգական պաթոսը, դառը հեգնանքը, կծու պարոդիան: Դեմոկրատական լինելով հանդերձ՝ Մ-ի երաժշտական լեզուն բարդ է, հնչողությունը գերհագեցած.



Գ. Մահլեր

նրա արվեստը *էքսպրեսիոնիզմի* վաղ դրսևորումներից է:

*Երկ.* Соллертинский И., Г. Малер, Л., 1932; Барсова И., Симфонии Густава Малера, М., 1975.

*Ա. Բուդաղյան*

**ՄԱՀԿԱՆԱԲԵՐԴ**, բերդ Մեծ Հայքի Գուգարք նահանգի Ձորոփոր (Կայան) գավառում, Աղստև գետի միջին հոսանքի ավազանում, Ոսկեպարի վտակ Խնձորկուտի աջ ափին, Դեղձնուտ վանքի մոտակայքում (այժմյան՝ Իջևանի շրջանում): Հիմնվել է XII դ. բարձրադիր ժայռի գագաթին, խիտ անտառի մեջ: XII—XIII դդ. պատկանել է Մահկանաբերդի Արծրունիներին, որի համար բերդին հարող շրջանը կոչվել է «գավառ Մահկանաբերդոյ»: Մ-ի պարիսպները համեմատաբար լավ են պահպանված, բայց հուշարձանը ճարտ. առումով չի ուսումնասիրված: Այժմ կոչվում է Բերդքար:

*Ռ. Մաթևոսյան*

**ՄԱՀԿԱՆԱԲԵՐԴԻ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆ**, XII—XIII դարերում ֆեոդալական կազմավորում Հյուսիսային Հայաստանում՝ Արծրունի տոհմից սերած իշխանների գլխավորությամբ: Ընդգրկում էր *Կայան* գավառը՝ Աղստև գետի միջին հոսանքում: Կենտրոններն էին *Կայան* ամրոցը և *Մահկանաբերդը*: Մ. ի-յան հիմնադիրը Վահրամ Արծրունին էր, Ամիր Քուրդ Արծրունու հայրը: XII—XIII դդ. Մահկանաբերդի Արծրունիների ֆեոդալական տան ներկայացուցիչները բարձր դիրք էին գրավում վրաց արքունիքում, ազգակցական կապեր ունեին Զաքարյանների հետ (տես *Արծրունիներ*): 1191-ին Ամիր Քրդի շնորհազրկումից հետո Կայան գավառը անցավ Զաքարյաններին: Մ. ի-յան տիրույթները Աղստևի հովտում սահմանափակվեցին Մահկանաբերդի շրջակայքով: 1236-ին իշխանության տարածքը տուժեց մոնղոլների արշավանքից: XIII դ. Մահկանաբերդի ֆեոդալական տան խոշոր ներկայացուցիչներն էին Սադուն Արծրունին և Խութլու Բուղան: Մ. ի. քայքայվեց XIV դ., մոնղ. տիրապետության ժամանակ:

*Ռ. Մաթևոսյան*

**ՄԱՀՄԱԴ**, գյուղ Տրապիզոնի վիլայեթում, նույն քաղաքից մոտ 16 *կմ* հարավ-արևմուտք: 1915-ին ուներ 10 տուն հայ բնակիչ: Զբաղվում էին այգեգործությամբ: Բնակիչները զոհվել են 1915-ին:

**ՄԱՀՄԱԴ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Սեբաստիայի վիլայեթի Նիկսար գավառում: 1915-ին ուներ 120 տուն հայ բնակիչ: Կար եկեղեցի և ութամյա վարժարան: Բնակիչները զոհվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ:

**ՄԱՀՄԵԴ**, Մուհամմադ, Մուհամեդ, Մահմուդ, Ահմադ, Համիդ (արաբ. «փառավոր», «գովասանքի

արժան») (մոտ 570, Մեքքա — 8.6.632, Մեդինա), արաբ կրոնական քարոզիչ, *մահմեդականության* հիմնադիրը, պետական գործիչ: Մահմեդականները Մ-ին անվանում են «մեծ մարգարե», «ալլահի դեսպան»: Ըստ ավանդության Մ. ծնվել է արաբ. կուրեյշ կոչվող ցեղի Բանու-հաշըմ սնանկացած տոհմում: Վաղ հասակում որբացել է, տառապել ընկնավորությամբ: Զբաղվել է հովվությամբ, ապա ծառայել մեքքացի մեծահարուստ այրի Հադիջային (ուղեկցել է նրա ուղտերի կարավանը), որի հետ ամուսնացել է: Զբաղվել է կրոնա-բարոյագիտական հարցերով: Ուսումնասիրելով հին, հատկապես հուդայական (մովսեսական) և քրիստոնեական միաստվածական կրոնական ուսմունքները, դրանց ազդեցությամբ Մ. ստեղծել է կրոնական վարդապետություն, որը հետագայում կոչվել է «իսլամ» («հնազանդություն», «ալլահի կամք»): Մեքքայում հալածվելով, Մ. իր հետևորդների հետ 622-ի սեպտ. 22-ին փախել է Յասրիբ կամ Յատրիբ (հետագայում՝ Մեդինա): Այդ իրադարձությունը կոչվել է «հիջրա»: Մ-ի հետևորդներն այն հռչակել են դարակազմիկ, և այնուհետև իրենց տարեգլուխը սկսել 622-ի սեպտ. 22-ից: Մեդինայում Մ. հիմնել է մեչիդ, որը դարձել է մահմեդականների երկրորդ սրբարանը (առաջինը՝ Մեքքայում, երրորդը՝ Երուսաղեմում): Մ. դարձել է Մեդինայի կառավարիչը, մահմեդական համայնքի զորահրամանատարը և գերագույն դատավորը: Մահմեդականությունը համաարաբական կրոն դարձնելու համար, տևական կռիվներից հետո, 630-ին Մ. գրավել է Մեքքան, կործանել հեթանոսական կռատները և հիմնել նոր սրբարաններ: Մինչև 632-ը իր իշխանությունը հաստատելով Արաբիայում՝ մահմեդականությունը հռչակել է միակ պաշտոնական գաղափարախոսությունը, որը կարևոր նշանակություն է ունեցել արաբ. տարանջատ ցեղերի միավորման, միասնական պետության ստեղծման և հզորացման գործում:

*Գրկ.* տես *Մահմեդականություն* հոդվածի գրականությունը:

**ՄԱՀՄԵԴԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔ**, տես *Շարիաթ*:

**ՄԱՀՄԵԴԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, իսլամ (< արաբ. islām — հնազանդություն), համաշխարհային կրոններից: Մ. առաջացել է VII դ.՝ Հիջազում (Արևմտյան Արաբիա): Հիմնադիրը *Մահմեդն* է (այստեղից էլ «Մ.», թեև կրոնի ընդունված անվանումը իսլամ է): Մ., որպես միաստվածային կրոն, փոխարինեց արաբ. ցեղերի մեջ տարածված բազմաստվածությանն ու ցեղային այլ կրոններին և գաղափարապես հիմնավորեց միասնական պետություն ստեղծելու արաբների ձգտումը, որը VI դ. վերջում —VII դ. սկզբում դարձել էր պատմական անհրաժեշտություն: Այս խնդիրն իրականացրեց Մ-յան դրոշի ներքո ծավալված կրոնա-քաղաքական շարժումը: Ստեղծված *կրոնապետությունն* արտահայտում ու սրբագործում էր նոր, մահմեդական և նրան հավկող հին վերնախավի շահերը: Մահմեդական համայնքը (ումմա), որը միաժամանակ և՛ քաղ. կազմակերպություն էր, և՛ կրոնական միավորում, միավորվեց միասնական հավատով: Լինելով կրոնի, քաղ. և իրավական նորմերի համադրություն, որում կրոնը հանդես է եկել որպես միասնականացնող և որոշիչ գործոն, Մ. ձեռք բերեց նշանակալի կայունություն, ինչպես հենց Արաբիայում, ուր նրա հիմքի վրա կազմավորվեց կենտրոնացված պետություն, այնպես էլ *արաբական նվաճումներից* հետո ստեղծված *խալիֆայությունում*: Մ-յան ունիվերսալացմանը նպաստեց համընդհանուր ճանաչում գտած կրոնահավասարողական իդեալը, նրան անցնելու ծայրահեղ պարզ կարգը և հոգևորական նվիրապետության բացակայությունը: Մ. նպաստեց խալիֆայությունում ձևավորվող *արաբական մշակույթի* զարգացմանը: IX—X դդ. Մ. վերածվեց բարդ համակարգի՝ փիլ.-աստվածաբանական (քալամ) և իրավական (*շարիաթ*) հիմքով: Մ-յան դավանաբանության միակ աղբյուրը *Ղուրանն* է, թեև պրակտիկայում նրան համարժեք է նաև սուրբ ավանդույթը (սուննան):

Իր դոգմատիկայի, բարոյախոսության, ծիսակատարության, առասպելաբանության բազմաթիվ գծերով Մ. առավել մոտ է քրիստոնեությանը և հուդայականությանը: Նրանցից (նաև զրադաշտականությունից և կրոնափիլիսոփայական ու քաղ. այլ հոսանքներից) Մ. փոխառել է բազմաթիվ գաղափարներ և սկզբունքներ, սակայն դրանք ձևափոխվել են և ձեռք բերել այլ նշանակություն:

Մ-յան բուն կրոնական կառուցվածքը բաղկացած է իմանից՝ հավատ Մ-յան ճըշմարտացիության նկատմամբ, և դինից (կրոնական պրակտիկա՝ կրոնական ծեսերի, բարոյականության, ավանդույթների ևնն հանրագումար): Իմանի էությունը արտահայտում է միաստվածության, Մահմեդի մարգարեական առաքելության և նրան նախորդած մարգարեների (մարգարե-առաքյալներից պաշտվում են Ադամը, Նոյը, Աբրահամը, Մովսեսը, Հիսուս Քրիստոսը. Մահմեդը համարվում է մարգարեներից վերջինը, բարձրագույնը), հրեշտակների, հայտնության, դժոխքի և դրախտի մասին հավատը: Մահմեդականները հավատին իրենց պատկանելությունն արտահայտում են հետևյալ բանաձևով. «Չկա աստվածություն, բացի միակ աստծուց (ալլահ) և Մահմեդը նրա առաքյալն է»: Ըստ Մ-յան, իսկական մահմեդականը կարող է հուսալ դրախտային բարգավաճություն, իսկ ոչ մահմեդականը դատապարտված է հավերժ դժոխային տանջանքների:

Դինի առանցքը «հավատի սյուներն» (արքան) են՝ 1. հավատի դավանում, 2. ամենօրյա հնգակի աղոթք (պարսկ. նամազ), որին նախորդում և հաջորդում է ծիսային լվացումը և ուղեկցվում խոնարհման ու երկրպագման շարժումներով, 3. ծոմ՝ *հիջրայի* թվականության ռամադան (իններորդ) ամսին (թույլատրվում է նաև կամավոր ծոմ՝ տարվա ցանկացած ժամանակ), 4. պարտադիր բարեգործություն (զաքյաթ կոչվող հարկի վճարում), թույլատրվում է նաև կամավոր ողորմություն, 5. ուխտագնացություն սրբազան քաղաք Մեքքա (սակայն ոչ պարտադիր որոշ կատեգորիաների հավատացյալների համար):

Մ-յանը բնորոշ է ընդարձակ ծիսային համակարգը, որը հաստատում է ոչ միայն հավատը «ամենազոր աստծու», այլև «մահմեդական համերաշխության» նկատմամբ: Բացառիկ նշանակություն է տրվում սովորույթներին և ավանդույթներին, դրանք սոցիալական հսկողության և համախոհության պահպանման գլխավոր միջոցն են: Մ. ունի բազմաթիվ տոներ (ֆիտր, կուրբան, մաուլիդ ևն): Էական նշանակություն է տրվում նաև այնպիսի կրոնական պարտականությանը, ինչպիսին է ջիհադը (*ղազավաթ*)՝ «պատերազմ հանուն հավատի», «սրբազան պատերազմ», որի համար բնորոշը ոչ միայն այլ երկրների զավթումն է, այլև այլադավանների («անհավատների») բռնի մահմեդականացումը:

Քաղ. պայքարը VII դ. ուղղափառ Մ-ից՝ սուննիզմից (տես *Սուննիներ*) բացի, որպես հակադիր հոսանք կյանքի կոչեց նաև շիիզմը (տես *Շիաներ*), որից VIII—IX դդ. առաջացան այլ աղանդներ: XVI—XVIII դդ. Մերձավոր Արևելքում գերիշխանության ձգտող Օսմանյան կայսրության և Իրանի միջև պատերազմները արտաքուստ մղվում էին այդ երկու ուղղությունների պայքարի քողի ներքո: XVIII դ. Մ-ում առաջացան միստիկական հոսանքներ, որոնցից ամենից հզորը *սուֆիզմն* էր:

Մ-յան պահպանողական և հետադիմական բնույթը նպաստել է մահմեդական Արևելքի տնտ., մշակութային հետամնացությանը: Միաժամանակ Մ., որպես այն դավանող ժողովուրդների ունիվերսալ գաղափարախոսություն, նպաստել է նրանց ազգային-ազատագրական շարժումների ակտիվությանը: Այս բանը պահպանել է Մ-յան ազդեցությունը սոցիալական կյանքում: Այսուհանդերձ, ամբողջովին վերցրած, տեղի է ունենում Մ-յան ավանդական ուժի ու հեղինակության, նրա սոցիալական նշանակության անկում: Կապիտալիստական հարաբերությունների զարգացումը, հատկապես XIX դ., էական փոխհարաբերություններ առաջացրեց Մ-յան ֆեոդալական գաղափարախոսության մեջ, որոնք հիմք դարձան XIX դ. վերջին — XX դ. սկզբին Մ-յան արդիականացմանը: Բարենորոգիչների (Աբդո, Ռաշիդ Ռիդա, Իկբալ) նպատակն էր Մ-յան քաղ. և ինտելեկտուալ ուժի վերականգնում ժամանակի գիտական, տեխ. և հասարակական հարաբերությունների պահանջներին համապատասխան: Սակայն այդ գաղափարախոսները չէին շոշափում Մ-յան հիմնական դոգմաները և սկզբունքները, այլ պարզապես ներառում էին նոր տարրեր: Այս պատճառով դեմոկրատական, լուսավորական, հակաֆեոդալական պահանջները հաճախ մղվում էին ետին պլան, և ընդգծվում Մ-յան անառարկելի առավելությունը մյուս հավատքների, սոցիալ-քաղաքական ուսմունքների և մշակույթների նկատմամբ: Մ-յան կրոնա-քաղաքական գաղափարախոսության արդիականացման արտահայտություն էր *պանիսլամիզմը*, որի հետևորդները, Վ. Ի. Լենինի գնահատմամբ, փորձում են եվրոպական և ամերիկյան իմպերիալիզմի դեմ ուղղված ազատագրական շարժումը միացնել խաների, կալվածատերերի, մոլլաների դիրքի ամրացման հետ (Երկ., հ. 31, էջ

171): Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, գաղութային լուծը թոթափած մի շարք երկրներ հռչակվեցին իսլամական հանրապետություններ:

Մ-յան հետևորդները (մոտ 500 մլն) բնակվում են Մերձավոր և Միջին Արևելքի, Հյուսիսային Աֆրիկայի, Հարավ-Արևելյան Ասիայի երկրներում: Մահմեդականներ կան նաև Հնդկաստանում, ԶԺՀ-ում, Բալկանյան երկրներում և այլ վայրերում, ՍՍՀՄ-ում՝ Միջին Ասիայում, Ղազախստանում, Ադրբեջանում, Աջարիայի, Աբխազիայի, Բաշկիրիայի, Հյուսիս-Օսեթական, Թաթարական և Չեչենո-Ինգուշական ԻՍՍՀ-ներում, ՌՍՖՍՀ մի շարք մարզերում և երկրամասերում:

ՍՍՀՄ-ում ու սոցիալիստական մյուս երկրներում Մ-յան, ինչպես և մյուս կրոնների սոցիալական արմատները վերացել են:

Քրիստոնեական երկրներում մահմեդական տիրապետության հաստատումից հետո քրիստոնյաները ազատ էին դավանելու իրենց կրոնը, միայն պետք է վճարեին *գլխահարկ* (ջիզիա): Հայաստանում իշխած, մեծ մասամբ կրոնապետական-մահմեդական տիրակալությունները, հայ քրիստոնյա բնակչության տարբեր խավերի նկատմամբ կիրառում էին անհանդուրժողական քաղաքականություն, որը առավել շեշտված կերպով սկսեց երևան գալ Առաջավոր Ասիայում սելջուկյան թուրքերի գերիշխանության հաստատումից հետո: XIV—XVI դդ. *բեյթ-ուլ-մալի* միջոցով տեղի էր ունենում հայ ավատատերերի հողային տիրույթների յուրացում, ունեզրկում և քաղ. մեկուսացում: XVI—XVIII դդ. Արևմտյան Հայաստանում օսմանյան իշխանությունների, իսկ Արևելյան Հայաստանում կզլբաշների տիրապետության օրոք, հաճախակի տեղի էին ունենում բռնի հավատափոխության դեպքեր, որոնք երբեմն ավարտվում էին նահատակությամբ, կատարվում էին *մանկահավաքներ* (դեվշիրմե), չէին ընդունվում ոչ-մահմեդականների վկայությունները դատարաններում ևն: Ավելի ուշ, Արևելյան Հայաստանում սկսեց կիրառվել իմամ Ջաֆարի օրենքը, ըստ որի Մ. ընդունող հայը դառնում է հայրական ողջ ունեցվածքի միակ ժառանգորդը: Հետզհետե սաստկացող ճնշումների և կրոնական խտրականության ու անհանդուրժողականության պայմաններում հայության մի մասը ձուլվում էր կամ արտագաղթում, որի հետևանքով և փոփոխվում է հոծ հայաբնակ շրջանների էթնիկական պատկերը: XIX դ. Ռուսաստանի հետ միավորումով կանխվեց Արևելյան Հայաստանի ամայացումը, իսկ Արևմտյան Հայաստանում հալածանքները շարունակվեցին մինչև 1915-ը և ավարտվեցին հայության զանգվածային տեղահանությամբ և ցեղասպանությամբ:

*Գրկ.* Մարքս Կ., Էնգելս Ֆ., Լենին Վ. Ի., Կրոնի մասին, Ե., 1977: Ատրպետ, Խալիֆաթ, Նոր Նախիջևան, 1898: Նույնի, Իմամաթ, Ալեքսանդրապոլ, 1906: Տեր-Մինասյան Ե., Կրոնների պատմություն, Էջմիածին, 1909: Լեո, Հայոց պատմություն, հ. 3, գիրք 1, գլ. 5, Ե., 1969: Փափազյան Հ. Դ., Սեֆյան Իրանի ասիմիլյատորական քաղաքականության հարցի շուրջը, «ԲՄ», 1956, № 3: Бартольд В. В., Ислам, Соч., т. 6, М., 1966; Беляев Е. А., Арабы, ислам и арабский халифат в раннее средневековье, М., 1966; Бертельс К. Э., Суфизм и суфийская литература, Избр. труды, т. 3, М., 1965; Петрушевский И. П., Ислам в Иране в VII—XV вв., [Л.], 1966; Григорян С. Н., Из истории философии Средней Азии и Ирана VII—XII вв., М., 1960; Религия и общественная мысль народов Востока, М., 1971; Степанянц М. Т., Философия и социология в Пакистане, М., 1967; Аширов Н., Эволюция ислама в СССР, М., 1972; Массэ А., Ислам, пер с франц., М., 1961.

**ՄԱՀՄՏԵՆՔ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Խիզանի գավառում: 1909-ին ուներ 30 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է:

**ՄԱՀՄՈՒԴ II** (Mahmut) (1785—1839), Թուրքիայի սուլթան 1808-ից: Կենտրոնացված ֆեոդալական միապետություն ստեղծելու նպատակով անցկացրել է զինվորական, վարչական, ֆինանսական և մշակութային բարեփոխումներ: 1826-ին ոչնչացրել է *ենիչերիներին* և ստեղծել եվրոպականացված կանոնավոր զորք՝ Սեկբան-ի ջեդիդ: 1834-ին, նահանգային իշխանությունների կենտրոնախույս քաղաքականությանը վերջ տալու նպատակով, կատարել է վարչական փոփոխություններ: Եվրոպական կարգով ստեղծել է մինիստրների խորհուրդ՝ Մեջլիս-ի վուկելա: Մ. II, թեև առաջ է քաշել քրիստոնյա ազգային փոքրամասնությունների իրավահավասարության հարցը, դաժանորեն ճնշել է կայսրությունում ծավալված ազգային-ազատագրական շարժումները: Մ. II-ի օրոք Ռուսաստանի հետ կնքվել է 1812-ի Բուխարեստի հաշտության պայմանագիրը (տես *Բուխարեստի հաշտության պայմանագրեր 1812, 1913, 1918*), 1829-ին՝ Ադրիանուպոլսի հաշտության պայմանագիրը (տես *Ադրիանուպոլսի հաշտության պայմանագիր 1829*), Հունաստանը ազատագրվել է թուրք. լծից, կնքվել դաշնակցային պայմանագիր Թուրքիայի և Ռուսաստանի միջև (տես *Ունքյար-Իսքելեսիի պայմանագիր 1833*):

*Ա. Փափազյան*

**ՄԱՀՄՈՒԴ ՂԱԶՆԵՎԻ** (969 կամ 971—1030), Ղազնևիների պետության (X—XII դդ. Միջին Արևելքում) տիրակալ 998-ից: Եղել է եռանդուն անձնավորություն, տաղանդավոր զորավար և հմուտ քաղաքագետ: 1000—1027-ին. ավերիչ արշավանքներ է ձեռնարկել Հյուսիսային Հնդկաստան, Խորեզմ, պատերազմել Կարախանյանների պետության (պետություն Միջին Ասիայում X—XII դդ.) դեմ, պարտության մատնել Բուխարայում հաստատված սելջուկներին: Նրա օրոք Ղազնևիների պետությունը հասել է ծաղկման գագաթնակետին և իր մեջ ընդգրկել Իրանի, Միջին Ասիայի մի շարք մարզեր, Հնդկաստանի հս. և հս-արմ. նահանգները: Հովանավորել է գիտության և մշակույթի զարգացումը:

**ՄԱՀՄՈՒԴՅԻՔ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Երզնկայի գավառում: 1909-ին ուներ 67 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին:

**ՄԱՀՎԱՆ ՀՈՎԻՏ** (Death Valley), երկրագնդի առավել խոր և անջուր իջվածքներից մեկը ԱՄՆ-ում, Մեծ Ավազանի հարավում: Երկարությունը մոտ 250 *կմ* է: Ծովի մակարդակից ցածր է 85 *մ*: Հյուսիսային Ամերիկայի ամենացածր վայրն է: Օդի առավելագույն ջերմաստիճանը 56,7°C է: Անվանումը կապված է 1849-ին ոսկի փնտրողների մահվան հետ (ջրի պակասի հետևանքով):

**ՄԱՀՏԵՍԻ ՄՈՒՐԱՏ** (Շահմուրատ) **ԲԱՂԻՇԵՑԻ** (ծն. թ. անհտ., Բաղեշ —1684), հայ խոջա, ազգային-ազատագրական շարժման գործիչ: Արտահայտել է հայ առևտրական կապիտալի ներկայացուցիչների ձգտումը: Կրետեի պատերազմի (1645—1669) վերջնափուլում (1666-ից), որպես դեսպան առաքվել է Փարիզ՝ Լյուդովիկոս XIV-ի արքունիք: Առաջադրել է Օսմանյան կայսրության քրիստոնյա բոլոր ժողովուրդների համատեղ ապստամբության, հարևան պետությունների ընդհանուր դաշնակցության, Օսմանյան կայսրության փլատակների վրա Հայաստանի և Արևելյան հռոմ. կայսրության վերականգնման ծրագիր, որի կենսագործման համար Ֆրանսիային է վերապահել գլխավոր դերը: 1666—83-ին գործել է Փարիզում, ունկնդրություններ ստացել Լյուդովիկոս XIV-ից: Արևմտահայ ազգային-ազատագրական շարժման գործիչները, նրանց թվում նաև Մ. Մ. Բ. *հայ ազատագրական լեգեոնի* և խաչակրաց արշավանքների ազդեցության տակ, հանդես բերելով արմ. կողմնորոշում, միաժամանակ դրել են այդ արշավանքներին Ռուսաստանին անպայման մասնակից դարձնելու խնդիրը: Նրանց ծրագրի հիմքում ընկած է հայ ժողովրդի զինված ապստամբության գաղափարը: Պահպանվել է Մ. Մ. Բ-ու 1683-ի փետրվարի հիշատակարանը, որում տրված է Վերսալի նկարագրությունը և 1672-ի իր ուղերձը Լյուդովիկոս XIV-ին, որտեղ ամփոփ շարադրված են հայ ազգային-ազատագրական շարժման ակնկալությունները:

*Վ. Դիլոյան*

**ՄԱՀՏԵՍՅԱՆ** Մանուկ (Էմանուել) Ակոբջանի [24.4(6.5).1857, Օրբազար (Արմյանսկ)—5(18).5.1908, Սիմֆերոպոլ], հայ նկարիչ: Նախնական կրթությունն ստացել է ծննդավայրում: 1878-ին ընդունվել է Պետերբուրգի Գեղարվեստի ակադեմիա, 1892-ին ստացել «ոչ դասական նկարչի» կոչում: 1892-ին վերադարձել է Թեոդոսիա և աշխատել Հ. Այվազովսկու արվեստանոցում, կրել նրա գեղանկարչության բարերար ազդեցությունը, բնակություն հաստատել Սիմֆերոպոլում: 1886-ից ցուցադրվել է Պերեդվիժնիկների, ինչպես և այլ ցուցահանդեսներում (Պետերբուրգ, Մոսկվա, Օդեսա, Խարկով ևն), 1895-ին բացել իր առաջին պատկերահանդեսը: 1909-ին Սիմֆերոպոլում (ետմահու) կազմակերպվել է նկարչի անհատական ցուցահանդեսը: Մ-ի պատկերման նյութը ծովն է, մեծ մասամբ առանց մար-

Մ. Ա. Մահտեսյան

Գ. Մ. Մահուբի

դու ներկայության: Զգտել է բնության վավերական հավաստիության, ծովային ազատ տարածությունների երևակման, գունապատկերի ընդհանրականության («Փրկության սպասողները», «Գիշեր Սև ծովի վրա», «Փոթորիկը», «Առավոտը», «Պուշկինի ժայռը», «Միջօրե», «Առագաստանավն անհանգիստ ծովում»): Մ. հայ գեղանկարչության մեջ Հ. Այվազովսկու ստեղծագործական մեթոդի առավել հետևողական ներկայացուցիչն է: Նրա աշխատանքները գտնվում են Հայաստանի պետական պատկերասրահում («Ծովի տեսարան առագաստանավով», 1898, «Փոթորիկ ծովի վրա», 1898), Սիմֆերոպոլի կերպարվեստի թանգարանում և մասնավոր հավաքածուներում:

Պատկերազարդումը տես 177-րդ էջից առաջ՝ ներդիրում:

*Գրկ.* Շիշմանյան Ռ., Բնանկարն ու հայ նկարիչները, Ե., 1958: Մարտիկյան Ե., Հայկական կերպարվեստի պատմություն, 19-րդ դարի երկրորդ կես, գիրք 2, Ե., 1975:

**ՄԱՀՏԵՍՅԱՆ** Յուլակ Տաղոյի [ծն. 18.12. 1928, գ. Վերին Ջեյվա (այժմ՝ Տարոնիկ, ՀՍՍՀ Էջմիածնի շրջանում)], հայ սովետական տնտեսագետ: Տնտեսագիտության դ-ր (1976), պրոֆեսոր (1977): ՍՄԿԿ անդամ 1952-ից: 1950-ին ավարտել է Երևանի համալսարանի տնտեսագիտության ֆակուլտետը: 1957—63-ին եղել է ՀՍՍՀ ԿՎՎ Երևանի վիճվարչության պետ: 1963—1975-ին դասախոսել է Երևանի համալսարանում: 1975-ից Երևանի ժող. տնտեսության ինստ-ի վիճակագրության ամբիոնի վարիչն է: Գիտական հետազոտությունները նվիրված են ՀՍՍՀ-ում հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի արտադրության և օգտագործման պրոբլեմներին:

**ՄԱՀՈՒԲԻ** Գևորգ [իսկականը՝ Մանուկյան Գևորգ Մանուկի, 1857, գ. Ղարաբուլաղ (այժմ՝ գ. Երնջատափ, ՀՍՍՀ Ապարանի շրջանում)—1935, գ. Երնջատափ], հայ աշուղ, աշուղական նոր դպրոցի վերջին ներկայացուցիչը: Աշակերտել է աշուղ Մահջուբին, որից ստացել է Մահուբի (արաբ.՝ ուշիմ) աշուղական անունը: Շրջել է հիմնականում հայրենի գավառում, նաև՝ Արևմտյան Հայաստանում: Երգերը կատարել է ինքնաշեն ջութակի նվագակցությամբ: Ստեղծագործել է աշուղական գրեթե բոլոր ժանրերով: Երգերի մի մասը չի պահպանվել: Մ-ի գործերն առաջին անգամ լույս են տեսել 1912-ին, Թիֆլիսում, «Մահուբի Գևորգի գլխի անցքերը և խրատական երգերը» (կազմ.՝ Ե. Խաչատրյան) խորագրով: Աշուղի ծննդյան 100-ամյակի կապակցությամբ, 1957-ին հրատարակվել է առավել համահավաք և ճշգրտված «Ջութակ» (կազմ.՝ Ա. Սախակյան) ժողովածուն: Մ-ի երգերի հիմնական թեման մարդն է, ընկերասիրությունը, ժողովուրդների բարեկամությունը, հայրենիքը: Նա փառաբանում է արդար վաստակով ապրող աշխատավորին, դատապարտում «զոռոզ տգետներին», պորտաբույծներին, ուրացողներին: Ճանաչված են Մ-ի «Անցավոր աշխարհ», «Գործ չունիս», «Հայրենիք», «Աշխարհս երազ է», «Բախտ» և այլ երգեր:

*Ա. Սախակյան, Մ. Մանուկյան*

**ՄԱՀՈՒԴ**, ապարատային մանման բրդե կամ կիսաբրդե մանվածքից գործվածք, որի արտաքին մակերևույթը լցման հետևանքով պատված է թելերի միահյուսումների նախշանկարը քողարկող թաղիքանման ծածկոցով:

**ՄԱՀՈՒԴԻ ՖԱԲՐԻԿԱ** Երևանի, ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկություն: Հիմնադրվել է 1947-ին: Թողարկում է 70 գունակցության 10 տեսակի մահուդ: Սերիական արտադրությունը սկսել է 1948-ից: Հիմնական արտադրամասերն են՝ ապարատ-մանարանը, գործվածքայինը, հարդմանը: Հումքը ստանում են Ղազախական, Վրացական և Ադրբեջանական ՍՍՀ-ներից (բուրդ), Ուկր. ՍՍՀ-ից և ՌՍՖՍՀ-ից (շտապել), Երևանի նուրբ բրդյա գործվածքների ֆաբրիկայից (ազբ): Մանվածքը մատակարարում է Սովետաշենի և Օրգեևի (Մոլդավ. ՍՍՀ) տրիկոտաժի ու Երևանի ձեռնոցների ֆաբրիկաներին: 1980-ին, 1948-ի համեմատ, արտադրանքի ծավալն աճել է 5,3 անգամ, կազմել 25 մլն ռ.: Ֆաբրիկայի արտադրանմուշները Բուենոս Այրեսի, Բելգրադի, Սան Ֆրանցիսկոյի ցուցահանդեսներում արժանացել են բարձր գնահատականի: Գիտատեխ. հարցերով կապված է ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության կոնստրուկտորական բյուրոյի, Մոսկվայի բրդի կենտրոնական ԳՀԻ-ի և այլ կազմակերպությունների հետ:

**ՄԱՁԻՆԻ** (Mazzini) Ջուզեպպե (1805—1872), իտալական հեղափոխական, Իտալիայի ազգային-ազատագրական շարժման առաջնորդներից, նրա ձախ հանրապետական-դեմոկրատական ուղղության գաղափարախոսը: Կրթությամբ իրավաբան: 1827-ին դարձել է *կարբոնարիների* ընկերության անդամ: 1830-ին ձերբակալվել է և կարճատև բանտարկությունից հետո՝ տարագրվել: 1831-ին Մարսելում հիմնել է «Երիտասարդ Իտալիա» գաղտնի հայրենասիրական կազմակերպությունը, որի քաղ. ծրագիրն էր ազատագրել Իտալիան ավստ. լծից, վերացնել միապետական վարչակարգը և պապի աշխարհիկ իշխանությունը, ստեղծել անկախ միասնական իտալ. պետություն՝ ձևով բուրժուա-դեմոկրատական հանրապետություն, հիմնված համընդհանուր ընտրական իրավունքի և քաղ. ազատության վրա: Նպատակին հասնելու պայման Մ. համարել է համաիտալ. հեղափոխությունը և ժողովրդի պարտիզանական կռիվը՝ բուրժ. հեղափոխականների ղեկավարությամբ: Ժողովրդին համարելով ազգային-ազատագրական պայքարի գլխավոր ուժ, Մ., սակայն, անտեսել է գյուղացիությանը հող տալու հարցը, վախենալով ազգային-ազատագրական շարժումից հեռացնել լիբերալ ազնվականներին և հողատեր բուրժուազիային: Առաջ է քաշել իդեալիստական-կրոնական տեսություն, համաձայն որի Իտալիայի ազատագրումը յուրաքանչյուր իտալացու սրբազան պարտքն էր (այստեղից էլ Մ-ի «Աստված և ժողովուրդ» լոզունգը): 1830—40-ական թթ. Մ-ի և նրա կողմնակիցների նախապատրաստած ապստամբությունները անհաջող են ավարտվել, հիմնականում ժող. զանգվածներից կտրված լինելու պատճառով: 1848—1849-ի հեղափոխության ժամանակ Մ. կռվել է բուրժ. հեղափոխականների շարքերում: 1849-ի մարտ—հուլիսին գլխավորել է Հռոմ. հանրապետության կառավարությունը, որի անկումից հետո տարագրվել է, բայց չի դադարեցրել պայքարը: 1853-ին, երկրի դեմոկրատական ուժերը համախմբելու նպատակով, հիմնել է «Գործողության կուսակցությունը», աջակցել Ջ. *Գարիբալդիի* 1860-ի սիցիլիական արշավանքին, որն ավարտվեց Բուրբոնների լծից ամբողջ Հարավային Իտալիայի ազատագրումով: 1860-ական թթ. Մ. և իր կուսակիցները, պայքարելով Իտալիայի ամբողջական վերամիավորման համար, ջանում էին այդ պայքարի մեջ ներգրավել բանվորներին, առաջադրում էին հասարակության սոցիալական վերափոխման ուտոպիական ծրագիր՝ խաղաղ ճանապարհով վերացնելով սոցիալական անհավասարությունը: Մ. վճռականորեն մերժել է բուրժուազիայի դեմ պրոլետարիատի դասակարգային պայքարի օրինաչափությունը: Այստեղից էլ նրա բացասական վերաբերմունքը Փարիզյան կոմունային և I Ինտերնացիոնալին: Որպես Իտալիայի անկախության և միասնության անխոնջ մարտիկ Մ. պատվավոր տեղ է գրավում Իտալիայի պատմության մեջ:

Ջ. Մաձինի

Հայ իրականության մեջ Մ-ի գաղափարների հետևորդ էր հեղափոխական-դեմոկրատ Մ. Նալբանդյանը, որը կապեր է ունեցել նրա հետ:

*Գրկ.* Кирова К. Э., Джузеппе Мадзини и утопический социализм (1830—1840), в сб.: История социалистических учений, М., 1964.

**ՄԱՂ**, հյուսած ցանցով հարմարանք՝ սորուն զանգվածներ (հացահատիկ, ալյուր, շաքարավազ, հող, ավազ ևն) մաղելու համար: Ըստ կիրառական նշանակության ունենում է տարբեր չափի ու խտության ցանցեր, որոնք հյուսվում են կաշեփոկերից, ձիու մազից, մետաղալարից, այժմ՝ նաև սինթետիկ թելերից: Տափակ, հարթ

(վիբրացիոն, ճոճվող), թմբուկային (պտտվող) և այլ Մ-եր կիրառվում են հիմնականում հանքանյութերի հարըստացման համար, շինարարության մեջ (հող, գաջ, ցեմենտ, ավազ են մաղելու), ալրաղաց և համակցված կերերի գործարաններում:

Հայաստանում գործածվել են կաշեփոկերից հյուսված կալեմաղը կամ շատրարը (նոր կալսված հացահատիկը մաղելու համար), քարմաղը (քարերն ու պատճառ հատիկները զատելու համար), փոկեմաղը կամ խախալը (հողն ու ծղոտի մասերը հեռացնելու համար): Հացի ալյուր մաղելու համար գործածվել է ձիու մազից հյուսված ալըրմաղը, իսկ նշխարքի ու խմորեղենի ալյուրի համար՝ նուրբ կտորից, պղնձալարից կամ ձիու բաշի բարակ մազերից հյուսված շարմաղը (շերտիկ):

*Լ. Պետրոսյան*

**ՄԱՂԱԴԱՆՈՍ** (Petroselinum), կարոս, հովանոցազգիների ընտանիքի միամյա կամ երկամյա խոտաբույսերի ցեղ: Հայտնի է 3 տեսակ, մշակության մեջ մեկը՝ բանջարանոցային Մ. կամ ցանովի Մ. (P. sativum կամ P. erisum): Երկամյա, խաչաձև փոշոտվող բույս է: Առաջին տարում առաջացնում է տերևների վարդակ և արմատապտուղ, երկրորդում՝ ծաղկակիր ցողուն (75—150 *սմ* բարձրությամբ) և սերմ: Վարդակի տերևները խիստ կտրտված են, եռակի փետրաձև, փայլուն մակերեսով, մուգ կանաչ գույնի: Ծաղիկները մանր են և դեղնականաչավուն: Պտուղը երկսերմ է, սերմերը մանր են, ունեն բնորոշ հոտ և մոխրա-կանաչ գույն: Հայտնի է Մ-ի երկու տարատեսակ՝ Մ. արմատապտղային և Մ. տերևային: Արմատապտղայինը մշակվում է բաց դաշտում: Սպիտակ արմատիկները օգտագործվում են բանջարեղենի, ձկան և մսի պահածոների արտադրության մեջ:

Տերևային Մ. ցանում են վաղ գարնանը՝ մարտ—ապրիլ, և աշնանը՝ սեպտեմբեր ամիսներին: Մ. տարածված կանաչեղեն է, օգտագործվում է որպես համեմունք (թարմ և չորացրած) կերակուրների, թթուների, պահածոների մեջ: Հարուստ է վիտամիններով, հանքային աղերով և եթերայուղերով: Տերևների թուրմը և սերմերը (փոշու ձևով) միզամուղ միջոցներ են: ՍՍՀՄ-ում մշակվում է առավելապես արմատապտղային Մ., ՀՍՍՀ-ում՝ տերևայինը:

**ՄԱՂԱՅԻՆ ԱՆԱԼԻԶ**, մանրացված նյութերի խոշորությունը որոշելու եղանակ՝ տարբեր չափերի անցքերով ստանդարտ մաղերի հավաքածուով մաղելու միջոցով:

**ՄԱՂԱՍԱԲԵՐԴ**, Մաղազբերդ, Մաղազիբերդ, ամրոց Մեծ Հայքի Այրարատ նահանգի Շիրակ Գավառում, Ախուրյան գետի արևմտյան ափին, ձորեզրին բարձրացող քարաժայռի վրա, Անի քաղաքից 4 *կմ* հարավ: Հիմնվել է հնագույն ժամանակներում: Ըստ Շապուհ Բագրատունու, VI դ. վերջին այն վերակառուցել է Բյուզանդիայի Մորիկ կայսեր հայ կուսակալ Մաղաս իշխանը և կոչել իր անունով: Մ. հաջորդաբար եղել է Կամսարականների, Բագրատունիների, Զաքարյանների ռազմ. կարևոր հենակետերից մեկը և այլ ամրոցների հետ (Տիգնիս, Աղջկա բերդ ևն) ռազմագիտական տեսակետից Անին պաշտպանելու նպատակով կազմակերպված «միակենտրոն համակարգի» մասը կազմել: XVII դ. Մ. տակավին կանգուն էր: Զաքարիա Սարկավագն այն հիշատակում է որպես պարսկ. զորակայան:

Մ. երեք կողմից շրջափակված է Ախուրյանի ջրերով ու հզոր պարիսպներով, իսկ մի կողմից պաշտպանված խոր անդունդով: Հս-արմ.՝ ցամաքային կողմից կրկնապարիսպ էր, մուտքով: Ներքին և ավելի բարձր պարիսպները ամրացված էին կիսաբոլոր աշտարակներով: Ներքին պարսպի դարպասի մոտից ստորգետնյա գաղտնուղին քարաշեն սանդուղքով կապված էր Ախուրյանին: Բերդի ներսում պահպանվել են քարաշեն տների, մատուռների, պալատի, բաղնիքի, քառակուսի հատակագծով մեծ ջրամբարի և այլ շինությունների ավերակներ: Պարիսպները այժմ մեծ մասամբ կանգուն են:



Մաղասաբերդ

*Գրկ.* Սարգիսյան Ն., Տեղագրութիւնք ի Փոքր և Մեծ Հայս, Վնտ., 1864: Ալիշան Ղ., Շիրակ, Վնտ., 1881: *Ա. Զարյան*

**ՄԱՂԱՎՈՒԶ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտակերտի շրջանում, շրջկենտրոնից 17 *կմ* հյուսիս-արևմուտք: Խաղողագործական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև անասնապահությամբ, հացահատիկային կուլտուրաների մշակությամբ, շերամապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, փոստ, կինո, մանկապարտեզ, բուժկայան: Մ-ում և շրջակայքում պահպանվել են եկեղեցի (XIX դ.), Թուխկասարի (VIII դ.), Անապատ (XII դ.), Երեքմանկանց (XVII դ.) վանքերը, Ջրաբերդ (VII դ.), Կաղանկատույք գյուղատեղիները (VII դ.):

**ՄԱՂԱՐԱ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Սեբաստիայի վիլայեթի Գանկալի գավառակում, 1914-ին ուներ մոտ 300 տուն (2400 անձ) հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ, արհեստներով, մասամբ՝ առևտրով: Կար եկեղեցի և վարժարան: Բնակիչները ողջակիզվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Մի քանի հոգու հաջողվել է փրկվել և անցնել Արևելյան Հայաստան:

**ՄԱՂԱՐԱՋՈՒՐ**, գյուղ Հայկական ՍՍՀ Ամասիայի շրջանում, շրջկենտրոնից 11 *կմ* հարավ-արևմուտք: Կոլտնտեսությունն զբաղվում է անասնապահությամբ, հացահատիկի, կերային կուլտուրաների և շաքարի ճակնդեղի մշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կապի բաժանմունք, բուժկայան:



Մաղարաջուր

**ՄԱՂԱՔԻԱ ԱԲԵՂԱ**, հայ պատմագիր և գրիչ: Տես *Գրիգոր Ակներցի*:

**ՄԱՂԱՔԻԱ ՂՐԻՄԵՑԻ** [XIV դ. սկիզբ, Ղրիմ —1384, գ. Ապրակունիս (այժմ՝ Նախիջևանի ԻՍՍՀ Ջուլֆայի շրջանում)], մշակութային գործիչ: Սովորել է Հովհաննես Որոտնեցու բարձրագույն դպրոցում, ստացել վարդապետական աստիճան: Հոր մահից հետո վաճառել է նրա ողջ ունեցվածքը և այդ միջոցներով հովանավորել Սյունիքում բացված երկու դպրոց, որոնցից մեկը տնօրինել է Հովհաննես Որոտնեցին (Որոտնավանքում), մյուսը՝ Սարգիս Ապրակունեցի րաբունապետը (Ապրակունիս գյուղին մերձակա Ս. Գևորգ վանքում): Այդ ուս. հաստատությունների նըպատակն էր պայքարել կաթոլիկ եկեղեցու գործակալների՝ ունիթոռների (միարարների) դեմ, որոնք կաթոլիկություն տարածելու նպատակով հաստատվել էին Ապրակունիսի դիմաց, Երնջակ գետի ձախ ափին՝ Քռնա գյուղում: Նրանց գլխավորում էր Հովհաննես Քռնեցին: Պայքարի բուռն շրջանում 1380-ական թթ. Հովհաննես Որոտնեցու դպրոցը տեղափոխվում է Ապրակունիս, իսկ Սարգիս Ապրակունեցու դպրոցը՝ Աստապատ գյուղ: Մ. Ղ. ոչ միայն հովանավորել է այդ դպրոցները, այլև դասավանդել այնտեղ: Տասնհինգամյա պայքարից հետո հակաունիթոռական շարժման ակտիվի մասնակից Մ. Ղ-ին 1384-ին Ապրակունիսում թունավորում է ունիթոռներից կաշառված իր սաներից մեկի մայրը: *Ա. Մաթևոսյան*

**ՄԱՂԱՔԻԱ ՃԵՎԱՀԻՐՃՅԱՆ**, Մաղաքիա տիրացու Ճեվահիրճի, Մաղաքիա Դպիր (ծն. և մահ. թթ. անհտ.), XVII դարի վերջի և XVIII դարի սկզբի հայ ժամանակագիր: Ծնվել է Խարբերդի գավառի Չնքուշ ավանում, որտեղից ընտանիքով տեղափոխվել է Կ. Պոլիս: Հայտնի է «Գաւազանագիրք կաթողիկոսացն Հայոց» և «Ժամանակագրութիւն» անտիպ գործերով: Վերջինս հայոց պատմության 551—1707-ի դեպքերի համառոտ տարեգրությունն է: Այս երկը Մ. Չամչյանի հիմնական աղբյուրն է եղել 1691—1707-ի պատմությունը շարադրելիս:

*Գրկ.* Չամչյան Մ., Պատմութիւն Հայոց, հ. 3, Վնտ., 1786: Ալիշան Ղ., Հայապատում, Վնտ., 1901: *Պ. Խաչատրյան*

**ՄԱՂԱՔՅԱՆ** Հարություն Կարապետի (8.4.1902, ք. Ախալքալաք —18.2.1954, Երևան), հայ սովետական երկրաբուսաբան: Կենսաբանական գիտ. դ-ր (1938), պրոֆեսոր (1938), ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ (1945): ՍՄԿԿ անդամ 1948-ից: 1925-ին ավարտել


Հ. Կ. Մաղաքյան


Հ. Գ. Մաղաքյան

է Թիֆլիսի պոլիտեխնիկական ինստ-ի ագրոնոմիական ֆակուլտետը: Եղել է ՀՍՍՀ կերահայթայթման ինստ-ի առաջին դիրեկտորը: 1926-ից Մ. ղեկավարել է կերային հանդակների հետազոտությունները, իսկ 1947-ից՝ ՀՍՍՀ կերային հանդակների պապորտավորման աշխատանքները: Կազմել է ՀՍՍՀ արոտավայրերի և խոտհարքների առաջին քարտեզը: Բացահայտել է ՀՍՍՀ ֆլորային բնորոշ բույսերի 30 նոր տեսակ: Հայտնաբերել է նոր ցեղ և տեսակ, որն անվանվում է նրա անունով՝ Stellera magakianisosn: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի և «Պատվո նշան» շքանշաններով:

*Երկ.* Этапы развития высокогорных лугов Закавказья, Е., 1947. *Ա. Ռուխկյան*

**ՄԱՂԱՔՅԱՆ** Հովհաննես (Իվան) Գևորգի [ծն. 24.3(6.4).1914, Թբիլիսի], հայ սովետական երկրաբան: ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1948), պրոֆեսոր (1949), գիտ. վաստ. գործիչ (1961): Ավարտել է Լենինգրադի լեռնային ինստ-ը (1935): 1934—40-ին աշխատել է ՍՍՀՄ ԳԱ Տաջիկ—Պամիրյան արշավախմբում՝ որպես ջոկատի պետ: 1940-ին զորակոչվել է բանակ: Ծանր վիրավորվելուց հետո, 1942-ի աշնանը, զորացրվել է և անցել աշխատանքի ՀՍՍՀ ԳԱ երկրաբանական գիտությունների ինստ-ում՝ որպես ավագ գիտաշխատող, իսկ 1947-ից՝ դիրեկտորի գիտական գծով տեղակալ: 1957-ին Մ. ընտրվել է ՀՍՍՀ ԳԱ նախ՝ տեխ. գիտությունների, իսկ 1963-ից՝ Երկրի մասին գիտությունների բաժանմունքի ակադեմիկոս քարտուղար: 1963—1966-ին համատեղության կարգով եղել է երկրաբանական գիտությունների ինստ-ի դիրեկտորը: 1940-ից դասախոսել է Լենինգրադի լեռնային ինստ-ում, իսկ 1950-ից մինչև այժմ՝ Երևանի համալսարանում: Հիմնական աշխատությունները վերաբերում են մետաղածնության, մետաղային հանքավայրերի ու ֆորմացիաների, միներալոգիայի, երկրաքիմիայի ու միներագրաֆիայի հարցերին: Մետաղային հանքավայրերի մասին ուսմունքի, հրաբխային ֆորմացիաների մետաղածնության, տեկտոնա-մագմատիկ համալիրների մետաղածնական մասնագիտացման գծով Մ-ի զարգացրած պրոբլեմները լայն արձագանք են գտել ՍՍՀՄ-ում և արտասահմանում: Մ-ի մի շարք գիտական աշխատություններ թարգմանվել են օտար լեզուներով: Նրա «Մետաղային հանքավայրեր» ձեռնարկը ՍՍՀՄ հիմնական բուհական դասագրքերից է, թարգմանվել է չինարեն (ՉԺՀ, 1957) և անգլերեն (ԱՄՆ, 1968): Մ. ընտրվել է ՀՍՍՀ V գումարման Գերագույն սովետի դեպուտատ: ՍՍՀՄ (1950) և ՀՍՍՀ (1976) պետական մրցանակների դափնեկիր է: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի, Կարմիր աստղի, «Պատվո նշան» շքանշաններով:

*Երկ.* Մետաղային հանքավայրեր, Ե., 1958: Մետաղածնություն, Ե., 1978: Основы металлогении материков, Е., 1959; Типы рудных провинций и рудных формаций СССР, М., 1969; Редкие, рассеянные и редкоземельные элементы, Е., 1971; Металлогения, М., 1974.

*Գրկ.* Մ а л х а с я н Э. Г., Х а ч а т у р я н Э. А., Иван Георгиевич Магакьян, Е., 1974.

**ՄԱՂԱՔՅԱՆ** (Թ ե ո փ ի լ յ ա ն, Մ ա ղ ա ք-Թ ե ո փ ի լ յ ա ն) Մատթեոս (16.9. 1767, Կ. Պոլիս —հունվար 1847, Վենետիկ, Ս. Ղազար կղզի), հայ բանասեր, մտածող: Մխիթարյան միաբանության անդամ: Կազմել է օրացույցներ, որոնցում տրված են նաև պատմական և աստղագիտական տեղեկություններ: Լրացրել է («Մ» տառից սկսած) Մ. Ջախջախյանի «Բառգիրք ի բարբառ հայ և իտալական» (1837) բառարանը: Ֆրանսերենից քաղվածաբար թարգմանել է «Կենսագրութիւն երեւելի արանց...» աշխատությունը (հ. 1—2, 1839), ուր Մ. գրել է նաև պետական-քաղաքական և մշակութային նշանավոր հայ գործիչներին նվիրված հոդվածներ: Այս աշխատությունը հայերեն հանրագիտական (կենսագրական) բնույթի գրականություն ստեղծելու փորձերից է և, չնայած արտահայտում է երևույթների նկատմամբ Մ-ի կղերա-ֆեոդալական վերաբերմունքը, ունի պատմաճանաչողական նշանակություն:

**ՄԱՂԱՔՅԱՆ** Պետրոս Ամբրոսիոսի (1826, Կ. Պոլիս —27.3.1891, Կ. Պոլիս), հայ դերասան, ռեժիսոր, թատերական գործիչ: Բեմ է բարձրացել 1856-ին, Կ. Պոլսում՝ Ս. Հեքիմյանի նորակազմ թատերախմբում: Կ. Պոլսի «*Արևելյան թատրոն*»-ի ամբողջ գործունեության ընթացքում (1861—76) Մ. այնտեղ եղել է ռեժիսոր և դերասան: Խաղացել է առավելապես սուր բնութագրական դերեր՝ Բանտապետ (Ռոթայի «Երկու հիսնապետեր»), Սկապեն (Մոլիերի «Սկապենի արարքները»): Ունեցել է և՛ կատակերգական, և՛ դրամատիկական ներգործման ուժ: Մելոդրամային սուր իրադրություններում Մ-ի խաղը եղել է թատերայնորեն տպավորիչ և հոգեբանորեն համոզող (Թիբուլե, Վ. Հյուգոյի «Արքայն զբոսնու»): Մ-ի լավագույն դերակատարումներից է նաև Տակոբերը (Է. Սյուի «Թափառական հրեա»): 1869-ից Մ. գլխավորել է «Արևելյան թատրոն»-ը՝ համախմբելով իր շուրջը Պ. Ադամյանին, Ա. Հրաչյային, Դ. Թրյանցին, Մ. Մնակյանին, Մարի Նվարդին, Սիրանույշին, Աստղիկին և ուրիշներին: Հետևողական պայքարել է Կ. Պոլսում հայ թատրոնը պահպանելու համար:


Պ. Ա. Մաղաքյան

*Գրկ.* Ս տ ե փ ա ն յ ա ն Գ., Ուրվագիծ արևմտահայ թատրոնի պատմության, հ. 1, Ե., 1962: *Հ. Հովհաննիսյան*

**ՄԱՂԹԵԼԱ**, գյուղ Տրապիզոնի վիլայեթի Սյուրմենե գավառակում, ծովափից մոտ 12 *կմ* հեռավորության վրա, լեռնալանջերում: 1914-ին ուներ 17 տուն հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ և արհեստներով: Կար եկեղեցի և վարժարան: Բնակիչները բռնի տեղահանվել և զոհվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: *Բ. Թոռլաքյան*

**ՄԱՂԽԱԶՈՒԹՅՈՒՆ** (ասոր. malxazu — իշխան, տեր), արքունի գործակալություն Արշակունյաց Հայաստանում: Ունեցել է արքունիքի պահակազորի և թագավորի թիկնազորի պարտականություն: Ժառանգաբար վարել է *Խորխոռունիների* նախարարական տոհմը, որի տանուտեր իշխանը եղել է թիկնազորի հրամանատարը և կրել «մաղխազ» տիտղոսը: Այդ պատճառով Խորխոռունիները կոչվել են նաև Մաղխազունիք կամ Մաղխազյանք:

*Գրկ.* Ի ն ճ ի ճ յ ա ն Ղ., Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի, հ. 2, Վնտ., 1835, էջ 139—140: Մ ա ն ա ն դ յ ա ն Հ., Ֆեոդալիզմը հին Հայաստանում, Ե., 1934: А д о н ц Н., Армения в эпоху Юстиниана, СПБ, 1908.

**ՄԱՂՐԻԲ** (արաբ. արևմուտք), արաբական նվաճումից հետո (VII դ. վերջ) Հյուսիսային Աֆրիկային (այժմյան՝ Թունիս, Մարոկկո, Ալժիր ևն) տված անվանումը: VIII—XIII դդ. Մ-ում կազմավորվեցին արաբաբերբերական պետություններ՝ Իդրիսյանների (788—974), Աղլաբյանների (800—909), *Ալմորավյանների* (XI դ. կես—1146), նաև *Ալմոհադների* (1121—1269), որոնք իրենց ենթարկեցին Իսպանիայի մի մասը: Ուշ միջնադարում Մ-ի մի մասը (Թունիս, Ալժիր) գտնվում էր Օսմանյան կայսրության կազմում:

Երբ Մարոկկոն և Թունիսը նվաճեցին անկախություն (1956), առաջ քաշվեց «Մեծ արաբական Մաղրիբ» ստեղծելու գաղափարը: Կազմակերպվեց Մ-ի երկրների մշտական կոմիտե, որի մեջ մտան Մարոկկոյի, Ալժիրի, Թունիսի, Լիբիայի տնտեսության մինիստրները: Ստեղծվեցին ճյուղային հանձնաժողովներ, կնքվեցին տնտ. համագործակցության պայմանագրեր: *Ա. Տեր-Ղևոնդյան*

**ՄԱՃԱՌ**, ըմպելիք, խաղողի՝ դեռևս գինու չվերածված, մասնակիորեն խմորման ենթարկված քաղցու: Ունի կիսաքաղցրթթվաշ համ: Ըմպում են խմորումն սկսվելուց հետո: Խմորումը լրիվ ավարտվելուց հետո դառնում է գինի: Հայաստանի խաղողագործական շրջաններում Մ. հայտնի է վաղ շրջանից (տես *Գինեգործություն*): *Լ. Պետրոսյան*

**ՄԱՃԱՎԱՐԻԱՆԻ** Ալեքսեյ Դավիդովիչ [ծն. 23.9(6.10).1913, Գորի], վրացի սովետական կոմպոզիտոր, դիրիժոր: ՍՍՀՄ ժող. արտիստ (1958): 1936-ին ավարտել է Թբիլիսիի կոնսերվատորիան (Ս. Բարխուդարյանի և Պ. Ռյազանովի կոմպոզիցիայի դասարաններ): Ստեղծագործական գործունեությունն սկսել է 1935-ին: 1956—

1958-ին եղել է Վրաստանի սիմֆոնիկ նվագախմբի գեղարվեստական ղեկավար, 1962—68-ին՝ Վրաստանի կոմպոզիտորների միության վարչության նախագահ, 1962—73-ին՝ ՍՍՀՄ կոմպոզիտորների միության քարտուղարներից: 1939-ից դասավանդում է Թբիլիսիի կոնսերվատորիայում (1963-ից՝ պրոֆեսոր): Ստեղծագործություններից են՝ «Օթելլո» բալետը՝ ըստ Շեքսպիրի (1957, էկրանավորվել է 1961-ին՝ «Վենետիկյան մավր» անունով), «Մայր և որդի» օպերան (1945), ջութակի և նվագախմբի կոնցերտը (1950, ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1951), «Հինգ մենախոսություն» վոկալ-սիմֆոնիկ շարքը (1968, Վրաց. ՍՍՀ պետ. մրցանակ, 1971) ևն: ՍՍՀՄ VI—VII գումարումների Գերագույն սովետի դեպուտատ:

**ՄԱՃԿԱԼ** (պհլ. մաճ՝ արոր և հայերեն կալել՝ բռնել), գութանի, արորի կոթը՝ մաճը, բռնող շինականը: Ուղղություն էր տալիս խոփին և հերկում վարելադաշտը: Նրա ցուցումներով էին գործում եզներին քշող հոտաղները: Մ. մեծ ժողովրդականություն է վայելել: Նրա մասին հորինվել են երգեր, բանաստեղծություններ:

**«ՄԱՃԿԱԼ»**, գյուղացիական թերթ: ՀԿ(բ)Կ Կենտկոմի հրատարակություն: Լույս է տեսել 1922—31-ին, Երևանում, տարբեր պարբերականությամբ (օրաթերթ, երկօրյա, եռօրյա, շաբաթաթերթ): Խմբագիրներ՝ Ե. Չուբար, Մ. Չոլախյան, Հ. Բաննաիյան, Գ. Ղազարյան, Է. Չոփուրյան, Ա. Հախումյան, Հ. Հովհաննիսյան: Տպագրել է կառավարական դեկրետներ, ժողկոմատների որոշումներն ու ցուցումները: Լուսաբանել է կուսակցական բջիջների աշխատանքը գյուղում, պատմել հանրապետության արդյունաբերության նվաճումների ու հեռանկարների մասին, զբաղվել անգրագիտության վերացման, նոր կենցաղի արմատավորման, առողջապահական գիտելիքների մասսայականացման, դպրոցական գործի վերակառուցման հարցերով: Տեղեկություններ է հաղորդել նաև սովետական մյուս հանրապետությունների առօրյայի, միջազգային քաղ. իրադարձությունների, կապիտալի երկրներում դասակարգային պայքարի մասին: Ունեցել է թերթիկ-հավելվածներ («Կարմիր զինվոր», «Աշխատավոր կնոջ թերթիկ», «Բատրակ», «Երիտասարդ մաճկալ» ևն):

**ՄԱՃԿԱԼԱՇԵՆ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտունու շրջանում, Ամարաս գետի աջ ափին, շրջկենտրոնից 18 *կմ* հարավ-արևմուտք: Միավորված է Սոսի կոլտնտեսության հետ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, կինո, գրադարան, բուժկայան, փոստ: Մ-ի շրջակայքում պահպանվել են Ամարասի վանքը (IV դ.), Ամարաս գյուղաքաղաքի ավերակները (II դ.), Ղազարի խաչքարը (IX դ.):

**ՄԱՄԱՅ** (ծն. թ. անհտ.—1380), թաթար զորապետ, *Ոսկե հորդայի* կառավարիչ: Արշավել է Ռուսիա, մեծ վնասներ հասցրել Ռյազանի (1373 և 1378), Նիժնի Նովգորոդի (1378) իշխանություններին: Փորձել է ներխուժել Մոսկվայի իշխանություն, իսկ Կուլիկովյան ճակատամարտում գլխովին ջախջախվել է (տես *Կուլիկովյան ճակատամարտ 1380*): Հարկադրված իշխանությունը զիջել է Լենկթեմուրի դրածո *Թոխթամիշին* և փախել Կաֆա (Թեոդոսիա), որտեղ և սպանվել է:

**ՄԱՄԱՅԿԱ**, հայաբնակ առողջավայրային ավան ՌՍՖՍՀ Կրասնոդարի երկրամասի Սոչի քաղաքի հյուսիս-արևմուտքում, Փսախե գետի ափին: Ունի միջնակարգ դպրոց, 3 հանգստյան տուն, ակումբ, կինո: Հիմնադրվել է 1852-ին: Հայերը եկել են Սամսունից և Տրապիզոնից, 1896-ին:

**ՄԱՄԱՋԱՆՅԱՆ** Աշոտ Պետրոսի [ծն. 26.5 (8.6).1908, Բաքու], հայ սովետական նկարիչ: ՀՍՍՀ վաստ. նկարիչ (1965): ՍՄԿԿ անդամ 1944-ից: 1930-ին ավարտել է Երևանի գեղարվեստա-արդյունաբերական տեխնիկումը: Աշխատում է հաստոցային գրաֆիկայի, գրքի ձևավորման և պլակատի բնագավառներում, ստեղծել է մատենանիշեր: 1937—38-ին ձևավորել է Հ. Թումանյանի և Ղ. Աղայանի, 1939-ին՝ «Սասունցի Դավիթ» էպոսի 1000-ամյակին նվիրված (ռուս.) հոբելյանական միհատորյակները: Գործերից են՝ «Հին Երևանը» (1932—40, գունավոր լինոփորագրություն), «Երևան-Էրեբունի» (1968, մենատիպ), «Ձիախաղեր» և «Իմ Հայաստանը» (1970—80, գունավոր օֆորտ, ջրավատինտա) նկարաշարերը, «Վարդան Սամիկոնյան» (1943, վիմագրություն): Ունեցել է անհատական ցուցահանդեսներ:



Ա. Մամաջանյան. «Սևանի ձկնորսները», լինոփորագրություն (1968)

**ՄԱՄԲՐԵ ՎԵՐԾԱՆՈՂ** (ծն. և մահ. թթ. անհտ.), V դարի երկրորդ կեսի հայ մեկնիչ, թարգմանիչ և ճառախոս: Կենսագրական տվյալները սակավ ու կցկտուր են: Ըստ ավանդական տեղեկությունների՝ Մ. Վ. Սահակ Պարթևի և Մեսրոպ Մաշտոցի կրտսեր աշակերտներից էր, Մովսես Խորենացու եղբայրը, բարձրագույն կրթություն է ստացել Ալեքսանդրիայում: Եղել է Բյուզանդիայում, արժանացել պատիվների: Հետագա մատենագիրները նրան անվանել են «մեծ փիլիսոփա»: Մ. Վ-ի մատենագիտական ժառանգությունից պահպանվել է միայն չորս ճառ (որոնց բովանդակությունն առնչվում է Նոր կտակարանին) և «Դատումն քերդածաց» խորագրով մի գրվածք, որը հավանաբար մի հատված է նրա կորած քերականության մեկնությունից: Թովմա Արծրունին (IX—X դդ.) օգտվել է նրա պատմական մի երկից, որը նույնպես չի պահպանվել: Մ. Վ-ի լեզուն հունաբան դպրոցի վաղ շրջանի հայերենն է, մեկնաբանության եղանակը՝ այլաբանական:

*Երկ.* Մատենագրութիւնք, Վնտ., 1833, էջ 31—93: *Պ. Խաչատրյան*

**ՄԱՄԵԴԱԶՈՐ**, Միմիդածոր, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Հադրութի շրջանում, շրջկենտրոնից 35 *կմ* հյուսիս-արևելք: Միավորված է Տողի սովետական տնտեսության հետ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, կինո, կապի բաժանմունք: Մ-ում կա եկեղեցի (Ս. Մինաս, XVIII դ.), շրջակայքում՝ Կավաք կիսաքանդ վանքային համալիրը (VII—XIII դդ.), հին գերեզմանատներ, խաչքարեր, գյուղատեղիներ (IX—XVII դդ.):

**ՄԱՄԵԴԿՈՒԼԻԶԱԴԵ** Ջալիլ Հուսեյնկուլի օղլի (կեղծանունը՝ Մոլլա Նասրեդդին, 22.2.1866, Նախիջևան —4.1.1932, Բաքու), ադրբեջանցի գրող, դրամատուրգ, հրապարակախոս, հասարակական գործիչ: Ուսուցչություն է արել Երևանի նահանգի գյուղերում: 1898-ին տեղափոխվել է Երևան, 1903-ին՝ Թիֆլիս, աշխատել «Շարգի-Ռուս» ադրբ. թերթի խմբագրությունում, աշխատակցել «Կավկազսկի ռաբոչի լիստոկ»-ին («Кавказский рабочий листок»): 1906—1930-ին, ընդմիջումներով, Թիֆլիսում հրատարակել է «Մոլլա Նասրեդդին» երգիծական ամսագիրը: «Դանաբաշ գյուղի իրադարձությունները» (1894, հրտ. 1936) վիպակում և նախահեղափոխական պատմվածքներում ռեալիստորեն պատկերել է ժողովրդի կյանքը: Գրել է «Մեռյալները» (1909), «Իմ մոր գիրքը» (1919), «Խելագարների հավաքույթը» (հրտ. 1936) կատակերգությունները: Մ. հայ և ադրբեջանցի ժողովուրդների բարեկամության ջատագով էր («Քյամանչա», 1920, հրտ. 1935, պիես ևն): Մտերիմ է եղել Ա. Շիրվանզադեի հետ:

*Երկ.* Երկ., Ե., 1966: Әсәрләри, ч. 1—3, Бакы, 1966—67; Избр. произв., т. 1—2, Баку, 1966.

*Գրկ.* Երևանլի Ա., Ջալիլ Մամեդկուլիզադեն և հայ ժողովուրդը, Ե., 1966: Ибрагимов М., Джалил Мамедкулизаде, М., 1966; Шариф А., Образы армян и творчество Мамедкулизаде, «Литературная Армения», 1966, № 10; Байрамов М., Дж. Мамедкулизаде и А. Ширванзаде, Е., 1966. *Ա. Բաղիրով*

**ՄԱՄԵԴՈՎԱ** Շևքեթ Հասան կըզի (18.4. 1897, Թիֆլիս — 8.6.1981, Բաքու), ադրբեջանցի սովետական երգչուհի (լիրիկակոլորատուրային սոպրանո): ՍՍՀՄ ժող. արտիստուհի (1938): ՍՄԿԿ անդամ 1942-ից: Սովորել է Կիևի կոնսերվատորիայում (1917—21), կատարելագործվել Միլանում և Փարիզում (1927—29): 1922—48-ին Մ. Ֆ. Ախունդովի անվ. ադրբեջանական օպերայի և բալետի թատրոնի մենակատարուհի: Լավագույն դերերգերից են Գյուլչոհրա (Հաջիբեկովի «Արշին մալ ալան»), Շահսանամ (Գլիերի «Շահսանամ»), Նարգիզ (Մագոմաևի «Նարգիզ»), Անտոնիդա (Գլինկայի «Իվան Սուսանին»), Ռոզինա (Ռոսսինիի «Սևիլյան սափրիչ») ևն: Մ. Անուշի (Ա. Տիգրանյանի «Անուշ») առաջին դերակատարն է ադրբ. երաժշտական թատրոնում: Մ-ի երգացանկում հայերեն կատարմամբ տեղ են գտել «Կռունկ», «Առ սիրուհիս» և այլ հայկ. երգեր: Համերգներով ելույթներ է ունեցել ՍՍՀՄ քաղաքներում, Ֆրանսիայում, Իրանում: Կազմակերպել է ադրբ. առաջին թատերական տեխնիկումը (1923), հանրապետական


Շ. Մամեդովա

նոտային հրատարակչությունը (1924): 1945-ից դասավանդում էր Ադրբեջանական կոնսերվատորիայում (1949-ից՝ պրոֆեսոր): Գրել է «Ադրբեջանի երաժշտական թատրոնի զարգացման ուղիները» (1931): Ադրբ. ՍՍՀ I—IV գումարումների Գերագույն սովետի դեպուտատ:

*Բ. Հովակիմյան*

**ՄԱՄԵՍՏԻԱ**, Մսիս, Մասիսա, Մոպսուեստիա, Մամիստրա, Մալմիստրա, Մոպսոս (հին հուն. Մոպսոս ատոծո անունով), քաղաք Դաշտային Կիլիկիայում, Ադանայից մոտ 25 *կմ* հյուսիս-արևելք, Պիրամոս (Ջահան) գետի աջ ափին: Հելլենիստական դարաշրջանում եղել է բարգավաճ ու ինքնավար քաղաք: Հռոմի տիրապետության ժամանակ դարձել է կայսերական կարևոր հենակետ Արևելքում: Ժամանակավորապես (մ. թ. ա. 80—70-ական թթ.) Մ., Դաշտային Կիլիկիայով հանդերձ, անցել է Հայաստանին: Քրիստոնեության հաստատումից հետո Մ. եղել է ինքնավար արքեպիսկոպոսի աթոռանիստ: IV դ. վերջին և V դ. սկզբին Մ-ի արքեպիսկոպոսն էր հռչակավոր գիտնական Թեոդորոս Մոպսուեստացին, որի հետ նամակագրական սերտ կապերի մեջ էին Մեսրոպ Մաշտոցը, Սահակ Պարթևը, Եզնիկ Կողբացին և ուրիշ հայ գործիչներ:

Հռոմ. կայսրության բաժանումից (IV դ. վերջ) հետո Մ. մնացել է Բյուզանդիայի *տիրապետության ներքո*: VII—X դդ. Մ. տիրել են մե՛րթ արաբները, մե՛րթ բյուզանդացիները: X—XI դդ. հայերը կազմել են Մ-ի բնակչության գերակշռող տարրը: XI դ. 1-ին կեսին Բյուզանդիան այն հանձնել էր հայ իշխան *Աբլղարիբ Արծրունուն*: Նույն դարի վերջին Մ. նվաճեցին խաչակիր ասպետները (այդ ժամանակ Մ-ի քաղաքապետն էր Ասպետ հայ իշխանը): XII դ. 1-ին կեսին հզորացած Ռուբինյանները հաղթեցին խաչակիրներին և ամբողջ Դաշտային Կիլիկիան, Մ-ով հանդերձ, միավորեցին Կիլիկյան Հայաստանին: Մ. դարձավ համանուն նահանգի կենտրոնը: 1152-ին բյուզանդական զորավար Անդրոնիկոսը պաշարեց Մ. և փորձեց գրավել այն: Սակայն Թորոս Բ Մեծ իշխանը ջախջախեց նրան և ազատագրեց Մ. (տես *Մամեստիայի ճակատամարտ 1152*): 1188-ին Լևոն Բ Մեծը Մ-ի հսկողությունը հանձնարարեց Չորտվանել Սասնեցու որդի Հեթումին՝ նրան կնության տալով իր եղբոր՝ Ռուբենի դստերը՝ Ալիծին:

**ՄԱՄԵՍՏԻԱՅԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏ 1152**, տեղի է ունեցել Բյուզանդիայի և Կիլիկյան Հայաստանի զորաբանակների միջև, *Մամեստիա* քաղաքի մոտ: Կիլիկյան Հայաստանը նվաճելու և Արևելքում կայսրության դիրքերը ամրապնդելու ծրագրով Մանվել Կոմնենոս կայսրը 12-հազարանոց զորաբանակով և պատերազմ վարելու արտակարգ լիազորություններով այնտեղ ուղարկեց իր ազգական Անդրոնիկոս Կոմնենոսին՝ նախապես նրան նշանակելով Կիլիկիայի դուկ: Խոստումներով, պարգևումներով Անդրոնիկոսին հաջողվեց իր կողմը գրավել նաև Արևմտյան Կիլիկիայի անջատամետ որոշ հայ իշխանների՝ Պապեռոնի տեր Սմբատ Հեթումյանին, Լամբրոնի տեր Օշին Հեթումյանին (Ներսես Լամբրոնացու հայրը), Բարձրբերդի տեր Վասիլ Նաթանայելյանին և Պռականի տեր Վասիլին: Պաշարելով Մամեստիան և մերժելով Մեծ իշխան Թորոս Բ-ի հաշտության առաջարկը՝ Անդրոնիկոսը հայտարարեց, որ խորտակելու է հայկ. իշխանությունը և Թորոսին իր հոր՝ Լևոն Ա-ի նման, շղթայակապ տանելու է Կ. Պոլիս: Ըստ բյուզանդական պատմիչ Նիկիտաս Քոնիատի և հայ պատմիչ Գրիգոր Երեցի, հայկ. զորաբանակը, Թորոս Բ-ի, նրա եղբայրներ Ստեփանեի ու Մլեհի հրամանատարությամբ, անձրևային մի գիշեր դուրս գալով պաշարված քաղաքից, պարտության մատնեց թշնամուն: Լքելով իր բանակը՝ Անդրոնիկոսը ապաստանեց Անտիոքի դքսի մոտ: Նիկիտաս Քոնիաթը վկայում է, որ հայ զորականները բյուզանդացիներին գերազանցում էին թե՛ իրենց քաջությամբ, թե՛ հմուտ մարտավարությամբ: Գերված բյուզանդական հրամանատարներին ու զինվորներին ազատելու համար կայսրությունը վճարեց մեծ փրկագին, որը, ի զարմանս բյուզանդացիների, Թորոս Բ բաժանեց հայ զինվորներին: Բյուզանդացիների կողմն անցած հայ իշխաններից Սմբատ Հեթումյանը զոհվեց մարտում, մնացածներն անձնատուր եղան Թորոս Բ-ին:

Մ. ճ. վճռորոշ նշանակություն ունեցավ Կիլիկյան Հայաստանի անկախությունը պահպանելու գործում:

*Գրկ.* Ալիշան Ղ., Սիսուան, Վնտ., 1885: Микаелян Г. Г., История Киликийского армянского государства, Е., 1952.

*Մ. Կատվալյան*

**ՄԱՄԶԱՐԱ**, հայաբնակ գյուղ Վրացական ՍՍՀ Բոգդանովկայի շրջանում: Զբաղվում են հողագործությամբ և անասնապահությամբ: Գյուղում գործում է ութամյա դպրոց: Մ-ի հայերը գաղթել են 1830-ին, Արևմտյան Հայաստանի Էրզրումի նահանգից:

**ՄԱՄԻԿՈՆՅԱՆ** Արշակ Սարգսի [18(30). 12.1872, Թիֆլիս —2.22.1937, Թբիլիսի], հայ սովետական դերասան: ՀՍՍՀ վաստ. արտիստ (1928): Սովորել է Լազարյան ճեմարանում: 1886—87-ին Մոսկվայում մասնակցել է Պ. Ադամյանի և Ս. Սաֆրազյանի ներկայացումներին: 1890-ին ընդունվել է Թիֆլիսի հայկ. թատրոն: Շուրջ տաս տարի խաղացել է նաև Ի. Ե. Փիթոևի ռուս. թատրոնում: Եղել է Երևանի առաջին պետթատրոնի հիմնադիրներից (1922): 1929-ից աշխատել է Թբիլիսիի հայկ. թատրոնում: Մ. կատակերգակ դերասան էր: Նրա դերակատարումներն աչքի են ընկել վարակիչ հումորով և կերպարի գունագեղությամբ: Դերերից են Կակուլի, Գիժ


Ա. Ս. Մամիկոնյան

Մոզի (Սունդուկյանի «Պեպո», «Քանդած օջախ»), Մինթոև (Շիրվանզադեի «Մորգանի խնամին»), Շմագա (Ա. Օստրովսկու «Անմեղ մեղավորներ»), Լուկա (Գորկու «Հատակում»), Դոն Բազիլիո (Ռոսսինիի «Սևիլյան սափրիչ»), Սոլոմոն (Ա. Դյումա հոր «Քին»):

*Բ. Հովակիմյան*

**ՄԱՄԻԿՈՆՅԱՆ** Հովհաննես Լևոնի [20.2. 1907, Ղարաքիլիսա (այժմ՝ Կիրովական)— 30.10.1970, Երևան], հայ սովետական գրականագետ: ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1965), բան. գիտ. դ-ր, պրոֆեսոր (1969): ՍՄԿԿ անդամ 1940-ից: 1932-ին ավարտել է Երևանի համալսարանը, որտեղ և դասախոսել է երկար տարիներ: 1941—48-ին «Սովետական Հայաստան» թերթի խմբագիրն էր, 1948—51-ին՝ ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի, 1951—1953-ին՝ գրականության և արվեստի բաժնի վարիչը: 1953—54-ին եղել է ՀՍՍՀ ԳԱ Մ. Աբեղյանի անվ. գրականության ինստ-ի դիրեկտորը, 1957—62-ին՝ Երևանի համալսարանի ռոմանա-գերմանական լեզուների ու գրականության ֆակուլտետի դեկանը: Գրել է «Արևմտյան Եվրոպայի գրականության պատմություն» (հեղինակակից՝ Ս. Հակոբյան, 1934—36), «Արևմտյան Եվրոպայի վերածնության դարաշրջանի գրականության պատմություն» (պրակ 1—2, 1939—40), «Սովետական գրականության բոլշևիկյան պարտիականության համար» (1949), «Արտասահմանյան գրականության պատմություն» (1957), «Մարդը և նրա կերպարը գրականության մեջ» (1966) և այլ ուսումնասիրություններ:

**ՄԱՄԻԿՈՆՅԱՆ** Մուշեղ Մանուկի [ծն. 15.9. 1904, գ. Խաթս (Արևմտյան Հայաստանի Մշո գավառում)], ՀՍՍՀ վաստակավոր մարզիչ (1961), ՀՍՍՀ ֆիզկուլտուրայի և սպորտի վաստակավոր գործիչ (1967): ՍՄԿԿ անդամ 1944-ից: 1948-ին ավարտել է Երևանի ֆիզիկական կուլտուրայի ինստ-ը: 1945—52-ին եղել է նույն ինստ-ի դահուկային սպորտի, 1952—70-ին՝ սպորտային խաղերի ամբիոնի վարիչ, 1970-ից՝ ֆիզիկական դաստիարակության տեսության և մեթոդիկայի ամբիոնի դոցենտ: Հեղինակ է գիտամեթոդական բազմաթիվ ձեռնարկների, որոնք վերաբերում են հայկ. ժող., դպրոցական, արտադպրոցական, սպորտային և շարժական խաղերին, դպրոցում ֆիզիկական դաստիարակության հարցերին: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

**ՄԱՄԻԿՈՆՅԱՆ** Նիկողայոս Հովհաննեսի [15.11.1860, Գանձակ (այժմ՝ Կիրովաբադ)—19.5.1937, Կիրովաբադ], հայ գրող: 1888-ին ավարտել է Օդեսայի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը և շուրջ

30 տարի որպես իրավաբան աշխատել Թիֆլիսում: Գրել է «Հազարից մեկը» (1895), «Չհասություն» (1898) վեպերը, որոնցում պատկերել է աշխատավորի ծանր կյանքը, արծարծել աշխատանքի, կնոջ և սիրո ազատության հարցեր: Նրա «Վիշապ» (1908) պատմվածքը (երկրորդ մասը լույս է տեսել «Լուսաբաց» հանդեսում № 5,1930) պղնձահանքերում պրոլետարականացող գյուղացու կյանքի մի դրվագ է:

**ՄԱՄԻԿՈՆՅԱՆ** Ռաֆայել Սամվելի (ծն. 20.3.1927, Թիֆլիս), հայ սովետական թերապևտ: Բժշկ. գիտ. դ-ր (1967), պրոֆեսոր (1969): *Նեֆրոլոգիայի* հիմնադիրներից է ՀՍՍՀ-ում: ՍՄԿԿ անդամ 1959-ից: 1950-ին ավարտել է Երևանի բժշկ. ինստ-ը: 1955-ից աշխատում է նույն ինստ-ի ֆակուլտետային թերապիայի ամբիոնում, 1968-ից՝ ամբիոնի վարիչ: 1973—80-ին եղել է բուժական ֆակուլտետի դեկան: 1969-ին Մ-ի նախաձեռնությամբ ֆակուլտետային թերապիայի ամբիոնին կից հիմնվել է նեֆրոլոգիայի լաբորատորիա, ուր մշակվել են երիկամների քրոնիկական անբավարարության, երիկամաավազանաբորբերի և երիկամաքարային հիվանդության պահպանողական բուժման հրատապ հարցերը: Մ-ի գիտական աշխատանքները նվիրված են ներքին հիվանդություններին, հիմնականում՝ երիկամային ախտաբանությանը:

*Երկ*. Շաքարախտ և շաքարախտային անգիոպաթիաներ, Ե., 1971 (հեղինակակից՝ Գևորգյան Գ. Գ.):

**ՄԱՄԻԿՈՆՅԱՆ** Ստեփան (1859, Ախալցխա —1921), հրապարակախոս, խմբագիր, մշակութային գործիչ: Սովորել է նախ Լազարյան ճեմարանում, ապա՝ Մոսկվայի համալսարանում: Աշխատել է որպես իրավաբան: Եռանդուն մասնակցություն է ունեցել Մոսկվայի հայ համայնքի մշակութային կյանքին: 1905-ին հրատարակել է կադետական ուղղության «Չաս» («Час») և «Պարուս» («Парус») թերթերը: Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին եղել է Մոսկվայում կազմակերպված հայկ. կոմիտեի նախագահը: Այդ կոմիտեի առաջարկությամբ և օժանդակությամբ Վ. Բրյուսովը հրատարակել է «Հայաստանի պոեզիան...» («Поэзия Армении», 1916) ժողովածուն:

*Գ. Ստեփանյան*

**ՄԱՄԻԿՈՆՅԱՆՆԵՐ**, նախարարական տոհմ Հայաստանում: Ըստ Մովսես Խորենացու և Սեբեոսի, Մ-ի նախնիները՝ ավանդական Մամիկն ու Կոնակը, III դ. 1-ին կեսին գաղթել են Հայաստան Ճենաց աշխարհից: Վերջինս Միջին Ասիայի և Հնդկաստանի միջև գտնվող Քուշանաց թագավորության այն մասն էր, որը կոչվում էր Թուխարիստան և Կաշմիր: Բանասեր Եղիա Քասունին Մ-ի նախնիների գաղթը Հայաստան իրավամբ դնում է 221—226-ի միջև: Նույն տարիներին Հայաստան են գաղթել Կամսարականների նախնիները և Սասանյաններից հալածվող պարթև Արշակունիների այլ շառավիղներ: *Խոսրով Ա* Մեծը Մ-ին դասել է հայ նախարարների շարքը և նրանց հատկացրել Տայքի մեծագույն մասը (որպես ժառանգական կալվածք), որը մինչ այդ արքունական զորակայան էր: IV դ. սկզբին Տարոնի տերերի՝ Սլկունիների, հակաարքունական խռովությունը ճնշելուց և այդ տոհմի բնաջնջումից հետո սպարապետության գործակալությունն անցավ Մ-ին, և Տարոն գավառը նույնպես դարձավ նրանց տոհմական սեփականությունը: Այնուհետև Տարոնի Ողական ամրոցը դարձավ Հայոց սպարապետի աթոռանիստը, իսկ Տայքի Իշխան գյուղը և Տայոց քար ամրոցը՝ այդ տոհմի իշխանանիստ կենտրոնները: Ըստ Գահնամակի, Մ. ունեին 3000 հեծյալ և արքունի գահակարգում գրավում էին 5-րդ տեղը: Մ-ի Հայոց սպարապետը գլխավորում էր Հայոց այրուձին և հետևակ զորքը: Սպարապետին էին ենթարկվում հայ նախարարների հեծելազնդերը: IV դ. վերջին, երբ կենտրոնական իշխանությունը թուլացել էր, հայ Արշակունիների գահին հավատարիմ Մ. եռանդուն պայքար էին մղում Մեծ Հայքի թագավորության ամբողջականության համար: Երբեմն դառնալով անչափահաս հայ գահակալների խնամակալ՝ ժամանակավորապես նրանց ձեռքում է կենտրոնացվել երկրի կառավարման ղեկը: Մ. սերտ կապերի (խնամիական ևն) մեջ էին Գրիգոր Լուսավորչի տան հետ: V դ. 1-ին կեսին այդ կաթողիկոսական տոհմի լայնածավալ կալվածքները դարձան Մ-ի տոհմական սեփականությունը: Արտաքին և ներքին քաղաքականության հարցերում սպարապետը և կաթողիկոսը միշտ գործակցել են և սովորաբար ունեցել հռոմ., ապա բյուզանդական կողմնորոշում: Նրանց միակողմանի քաղաքականության հետևանքով երբեմն թուլացել է Մեծ Հայքի թագավորության դիմադրական ուժը: Սասանյան Պարսկաստանի և Արևելյան Հռոմեական (Բյուզանդական) կայսրության միջև Մեծ Հայքի թագավորության բաժանումից (385) հետո Հայոց սպարապետը մնաց Հայոց թագավորի հետ, որի արքունիքը գտնվում էր Հայաստանի պարսկ. մասում: Արշակունիների թուլացած գահի անկումից (428) հետո Մ. մնացին երկրի ամենահեղինակավոր տոհմը, որոնց շուրջը համախմբվեցին հայրենասեր ուժերը և շարունակեցին ազատագրական պայքարը Սասանյան Պարսկաստանի դեմ (450—451, 481—484, 571—572): Հայաստանի բյուզանդական մասում իշխող Մ-ի մի ճյուղը ազդեցիկ դեր է խաղացել կայսերական արքունիքում և հաճախ գլխավորել հայ ժողովրդի ապստամբական ելույթները կայսրության դեմ (548 ևն): V—VIII դդ. Մ. գլխավորել են հայ ժողովրդի ազատագրական կռիվները արաբ. նվաճողների դեմ (747—753, 772—775 ևն): Օտար զավթիչների դեմ կռիվներում սպարապետներից իրենց անունն անմահացրել են Վասակ, Սամվել, Մուշեղ, Մանվել (IV դ.), Վարդան, Վահան, Վարդ (V դ.), Վարդան Կարմիր (VI դ.), Դավիթ, Գրիգոր, Մուշեղ (VII—VIII դդ.) Մամիկոնյանները:

Հայաստանում արաբ. գերիշխանության ժամանակաշրջանում խալիֆայությունը ձգտում էր վերացնել հայրենասեր ուժերին, հատկապես Մ-ին: Այդ պայմաններում Մ-ի մրցակից Բագրատունիները, համագործակցելով արաբ. վարչական մարմինների հետ, հետզհետե առաջնություն են ձեռք բերում Հայաստանի կառավարման գործերում: 772—775-ին Մ-ի գլխավորած հակաարաբական մեծ ապստամբության պարտությունից հետո Հայաստանում ղեկավար դերը վերջնականապես անցավ Բագրատունիներին, որոնք VIII դ. վերջին քառորդին և IX դ. սկզբին տիրացան Մ-ի գրեթե բոլոր կալվածքներին: Ստեղծված պայմաններում ֆիզիկական ոչնչացումից փրկված Մ-ի մնացորդները մասամբ ապավինեցին բյուզանդական կայսրությանը: Մ-ից շատերը բյուզանդական արքունիքում հասել են բարձր պաշտոնների, իսկ ոմանք՝ կայսերական գահին: Մ-ից մի շարք անվանի զորավարներ գլխավորել են բյուզանդական զորքերը և հաղթական պատերազմներ վարել արաբների դեմ: Մ-ի մի մասը հանգրվանեց կայսրությանը սահմանակից Տայքի անտառախիտ լեռներում, որոշ մասը՝ Արևմտյան Վրաստանի Արգվեթի գավառում, որի կենտրոնն էր Կացխի ամրոցը: Վերջիններս ընդունելով քաղկեդոնական դավանանքը, աստիճանաբար ձուլվեցին վրացիներին և ընդունեցին «Բաղուաշի» տոհմանունը: Քաղկեդոնական դարձան նաև Գուգարքի հս. ծայրամասում՝ Օրբեթի ամրոցում ապաստան գտած Մ., որոնք ընդունեցին Օրբելի տոհմանունը: 1211-ից ստանալով Սյունիքի հիմնական մասը, նրանք հիմնեցին Սյունյաց Օրբելյանների տոհմը, որոնք ընդունեցին հայկ. դավանանքը և վերստին հայացան: X դարից Հս. Հայաստանում բնակվող Մ-ից շատերը նույնպես ընդունեցին քաղկեդոնական դավանանքը՝ դառնալով բյուզանդական կամ վրաց. եկեղեցիների հետևորդներ: Տայքի Ասեաց փոր գավառի Չորդվանքի վրացադավան հայերի եպիսկոպոսական աթոռը Մ-ի շառավիղների ժառանգական արտոնությունն էր: Այդ պատճառով Չորդվանքում նստող եպիսկոպոսի «Չորդվանելի» վրաց. տիտղոսն այնուհետև դարձավ Մ-ի Տայքի ճյուղի տոհմանունը (Չորդվանելեանք): Սրանցից էին սերում Մ-ի մեկ այլ՝ *Թոռնիկյանների* ճյուղը (Սասունում): Վերջիններս XI դ. հետզհետե տիրեցին Տարոնը և հարևան գավառները՝ հանդես գալով որպես Շահ-ի Արմենների վասալներ: Այս ճյուղի ականավոր ներկայացուցիչը եղել է Թոռնիկ Մամիկոնյանը:

Զաքարյանների հզորացման ժամանակաշրջանում (XII—XIV դդ.) հայտնի էին Դսեղի Մ. (Գուգարքում), որոնց շառավիղները XIX դ. կրում էին Թումանյան ազգանունը: Այս տոհմի ներկայացուցիչն է նաև հայ գրականության դասական Հովհաննես Թումանյանը: Մ-ի այլ շառավիղներ երբեմն տոհմանունը փոխած պահպանվել էին նաև Հայաստանի այլ տեղերում:

*Գրկ*. Սեբեոս, Պատմութիւն, Ե., 1979: Զենոբ Գլակ, Պատմութիւն Տարոնոյ, Վնտ., 1832: Անդրիկյան Ն., Բուզանդի Մամիկոնյանները, Վնտ., 1904: Քասունի Ե., Ճենաց աշխարհ. Աշխարհագրական պատմական հետազոտություն մը (Մամիկոնյանց ծագման վերաբերմամբ), «Հասկ» հայագիտական տարեգիրք, Անթիլիաս, 1957: Адонц Н., Армения в эпоху Юстиниана, СПБ, 1908.

*Ս. Երեմյան*

**ՄԱՄԻԿՈՆՅԱՆՑ** Հրազդան Մուշեղի [20.4(3.5).1890, Բաքու —18.3.1976, Մոսկվա], հայ սովետական ինժեներ-գնդապետ,

այրվող գազանավթային շատրվանների հրշիջման մասնագետ: ՍՄԿԿ անդամ 1947-ից: Ավարտել է Տոմսկի տեխնոլոգիական ինստ-ը (1914): 1920-ական թթ. կազմակերպել է Բաքվի նավթահանքերի հրշեջ պաշտպանությունը: 1922-ին, Ս. Մ. Կիրովի գլխավորած հրշեջ շտաբի կազմում մասնակցել է Սուրախանիի (Բաքու) նավթի գուռերի ու ամբարների՝ իր մասշտաբով աննախադեպ հրդեհի մարման աշխատանքներին: Մ-ի առաջարկած պլանով 1931-ի ապրիլի 7-ին, հայրենական պրակտիկայում առաջին անգամ, պայթյունի օգնությամբ հանգցվել է գազի շատրրվանի ութ և կես ամիս տևած հրդեհը Մայկոպի մոտ: 1943—68-ին աշխատել է ՍՍՀՄ ՆԳՄ հրշեջ պաշտպանության գլխավոր վարչությունում: 1968-ից, կենսաթոշակի անցնելուց հետո, աշխատել է նավթի համամիութենական գիտահետազոտական և նախագծային ինստ-ում (Մոսկվա) որպես գլխավոր մասնագետ: Մշակել է այրվող գազանավթային շատրվանների արագ հրշիջման նոր մեթոդիկա և տեխնիկա: Նրա մասնակցությամբ և ղեկավարությամբ են մարվել նավթահանքերի մի շարք բարդ հրդեհներ Գրոզնիում, Օրենբուրգում, Սարատովում և սոցիալիստական մի շարք երկրներում: Մ. անմիջական օգնություն է ցույց տվել Հայաստանում ռազմականացված հրշեջ պաշտպանության կազմակերպման ու զարգացման գործին: Պարգևատրվել է Լենինի 2 շքանշանով, ինչպես նաև ԳԴՀ, Լեհաստանի, Հունգարիայի, Բուլղարիայի շքանշաններով ու մեդալներով:

*Երկ.* Тушение пожаров мощных газовых и нефтяных фонтанов, М., 1971.

*Լ. Ստեփանյան*


Դ. Ն. Մամին-Սիբիրյակ

**ՄԱՄԻՆ-ՍԻԲԻՐՅԱԿ** (իսկական ազգանունը՝ Մամին) Դմիտրի Նարկիսովիչ [25.10 (6.11).1852, Վիսիմ Շայտանի գործարան, այժմ՝ Վիսիմ (Սվերդլովսկի մարզում)— *2(15).11.1912*, Պետերբուրգ)], ռուս գրող: 1868—72-ին սովորել է Պերմի հոգևոր ճեմարանում, 1872-ին ընդունվել է Պետերբուրգի բժշկա-վիրաբուժական ակադեմիայի անասնաբուժական ֆակուլտետը, չավարտած տեղափոխվել է Պետերբուրգի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը: 1877-ին ստիպված թողել է համալսարանը, մեկնել Ուրալ, որտեղ մնացել է մինչև 1891-ը: Այնուհետև ապրել է Պետերբուրգում և Ցարսկոյե Սելոյում: Նրան ճանաչում են բերել «Պրիվալովների միլիոնները» (1883, հայերեն հրտ. 1955), «Լեռնային բույն» (1884), «Վայրի երջանկություն» (1884), «Երեք ծայր» (1890), «Ոսկի» (1892), «Հաց» (1895) վեպերը, ինչպես նաև «Ուրալյան պատմվածքներ» (հ. 1—4, 1888—1901), «Սիբիրյան պատմվածքներ» ակնարկների, վիպակների ու պատմվածքների շարքերը: Մ-Ս-ի ստեղծագործությունը բուրժ. գիշատչության երգիծական տարեգրությունն է և ժողովրդի կյանքի վիթխարի էպոպեան: Գրողի աշխարհայացքը ձևավորվել է 1860—80-ական թթ. դեմոկրատական փիլիսոփայության և հեղափոխական շարժման ազդեցությամբ: Ռուս. գրականության պատմության մեջ նա մտել է որպես ականավոր գրող-ռեալիստ: Գրել է նաև դրամատիկական երկեր, զրույցներ, պատմական վիպակներ, ինքնակենսագրական գործեր, պատմվածքներ ու հեքիաթներ մանուկների համար («Ալյոնուշկայի հեքիաթները», 1894—96, հայերեն հրտ. 1954, «Որսորդ Եմելյան», 1884, հայերեն հրտ. 1937, «Մոխրավզիկը»,1893, հայերեն հրտ. 1928):

*Երկ.* Լուսատտիկներ, Թ., 1907: Հանցանք, Թավրիզ, 1909: Ընտիր պատմվածքներ, Ե., 1935: Պատմվածքներ, Ե., 1958: Собр. соч., т. 1—10, М., 1958.

*Գրկ.* Груздев А. И., Д. Н. Мамин-Сибиряк. Критико-биографический очерк, М., 1958; Дергачев И. А., Д. Н. Мамин-Сибиряк, Свердловск, 1977.

**ՄԱՄԻՋԱՆՅԱՆ** Արտաշես Մկրտչի [ծն. 2(15).12.1910, Մեղրի], հայ սովետական ճարտարապետ: ՀՍՍՀ վաստ. շինարար (1960): ՍՄԿԿ անդամ 1945-ից: Ավարտել է Երևանի Կ. Մարքսի անվ. պոլիտեխնիկական ինստ-ը (1938), աշխատել նույն ինստ-ի ճարտ. ամբիոնում, 1967-ից՝ քաղաքաշինական և արդ. շենքերի ճարտ. ամբիոնի վարիչ, պրոբլեմային լաբորատորիայի գիտական ղեկավար (1960), պրոֆեսոր (1971): Մ-ի գիտական աշխատանքները նվիրված են շինարարական տեխնիկայի և ճարտ. արվեստի փոխհարաբերության, ինդուստրիալ տնաշինության զարգացման հարցերին: Մ-ի նախագծերով Երևանում կառուցվել են Հաղթանակի կամուրջը (1943, ինժեներ՝ Ս. Հովնանյան), պոլիտեխնիկական ինստ-ի գլխավոր (1955), գիտահետազոտական բաժնի (1960) և ռադիո-էլեկտրոնիկայի ֆակուլտետի (1976) մասնաշենքերը:

**ՄԱՄԻՋԱՆՅԱՆ** Էրիկ Արտաշեսի (ծն. 7.8. 1936, Կիսլովոդսկ), հայ սովետական ֆիզիկոս: Ֆիզմաթ գիտ. դ-ր (1975), պրոֆեսոր (1980): ՍՄԿԿ անդամ 1966-ից: Ավարտել է Երևանի համալսարանը (1958), ուր և աշխատել է մինչև 1970-ը: 1970-ից Երևանի ֆիզիկայի ինստ-ի տիեզերական ճառագայթների բաժնի վարիչն է: Աշխատանքները վերաբերում են գերբարձր էներգիայի տարրական մասնիկների ֆիզիկային: Զբաղվել է $10^{11}$—$10^{13}$ *էվ* էներգետիկ տիրույթի նեյտրոն-միջուկային փոխազդեցության կոմպլեքսային հետազոտությամբ, մասնակցել տիեզերական ճառագայթներում լիցքավորված հադրոնների նույնականացման աշխատանքներին: Մշակել է իոնացման կալորիմետրի և նեյտրոնային սուպերմոնիտորի հնարավորությունների ընդլայնման մեթոդիկան, ուսումնասիրել իոնացման կալորիմետրի և էմուլսիոն ու տրեկային դետեկտորների զուգակցման պրոբլեմը:

**ՄԱՄԻՍՈՆԻ ԼԵՌՆԱՆՑՔ**, գտնվում է Մեծ Կովկասի Ջրբաժան լեռնաշղթայի կենտրոնական մասում, Արդոն և Ռիոն գետերի վերին ավազաններում: Բարձրությունը 2829 *մ* է: Մ. լ-ով է անցնում Ռազմաօսեթական ճանապարհը:

**ՄԱՄԼԱԾ ՓԱՅՏԱՆՅՈՒԹ**, փայտաթելերին ուղղահայաց, մինչև 30 *Մն/մ²* ճնշմամբ սեղմված փայտանյութ: Մ. փ-ի խտությունը 1200—1450 *կգ/մ³* է: Ըստ մամլման եղանակի տարբերում են միակողմ, երկկողմ և կոնտուրային խտացմամբ ստացվող Մ. փ.: Միակողմ խտացումը կատարվում է փայտանյութի չորսվակները փայտաթելերի լայնքով մեկ ուղղությամբ, իսկ երկկողմը՝ երկու ուղղությամբ մամլելով: Երկրորդ եղանակով ձեռք է բերվում ավելի բարձր խտություն: Կոնտուրային խտացումն իրագործվում է փայտանյութի գլանաձև նախապատրաստուկներն ավելի փոքր տրամագծով մետաղե գլանի մեջ ներմղելով: Ստատիկ ծռման, փայտաթելերի երկայնքով սեղմման դեպքում Մ. փ-ի ամրությունը, ինչպես նաև ճակատային մակերևույթի կարծրությունը, 2—3 անգամ ավելի մեծ է, քան բնական փայտանյութինը: Արդյունաբերությունում Մ. փ. փոխարինում է մետաղներին, տեքստոլիտին: Մ. փ-ից պատրաստում են ջուլհակային հաստոցների քչոցներ, հղկանյութային միջավայրում աշխատող սահքի առանցքակալներ և այլ դետալներ:

**ՄԱՄԼԱԿ**, դետալները մշակելու կամ հավաքելու ընթացքում սեղմող և պահող հարմարանք: Բաղկացած է երկու շուրթերով (անշարժ և շարժական) իրանից, որոնց միջև սեղմվում է դետալը: Մ-ի շուրթերի մոտեցումն ու սեղմումը կատարվում է պտուտակի կամ արտակենտրոնակի բռնակը ձեռքով, սեղմված օդով (պնևմատիկ) կամ հեղուկով (հիդրավլիկական) պտտելով:



Փականագործական մամլակներ. *1.* ձեռքի, *2.* զուգահեռ, *3.* սեղանի

**ՄԱՄԼԱԿԱՂԱՊԱՐ**, պլաստմասսաներից և փոքր կարծրություն ունեցող այլ նյութերից մամլման եղանակով ծավալային շինվածքներ պատրաստելու հարմարանք: Բաղկացած է խոռոչավոր 2 մետաղական սալերից (խոռոչը համապատասխանում է շինվածքի ուրվագծին):

**ՄԱՄԼԱՄԱՅՐ**, ճնշմամբ մետաղամշակման ժամանակ կիրառվող որոշ *դրոշմոցների* կամ այլ աշխատանքային գործիքների հիմնական մասերից մեկը: Ունի խորացում (կամ միջանցիկ անցք), որը ձևով կամ ուրվագծով համապատասխանում է մշակվող դետալին: Ըստ կառուցվածքի Մ-երը լինում են ամբողջական, երկատվող և սեկցիաներով:

**ՄԱՄԼԱՄԱՍ**, մետաղների սառը և տաք *դրոշմման* և *մամլման* դրոշմոցների հիմնական դետալներից: Դրոշմման ժամանակ Մ. անմիջականորեն ճնշում է գործադրում դրոշմոցի երկրորդ մասի՝ *մամլամայրի* վրա գտնվող նախապատրաստուկի վրա: Մամլման դեպքում մամլիչ-

տափօղակի միջոցով Մ-ի ճնշումը հաղորդում է նախապատրաստուկին: Հաճախ դրոշմոցի նույն մասը միաժամանակ ծառայում է որպես Մ. և մամլամայր:

**ՄԱՄԼԻՉ**, ճնշմամբ նյութերի մշակման ստատիկ գործողության մեքենա: Լայնորեն կիրառվում է արդյունաբերության տարբեր բնագավառներում՝ մետաղների, պլաստիկ զանգվածների, ռետինի, սղոցամթերքի և այլ նյութերի մշակման, ինչպես նաև բարձր ճնշման պայմաններում դրանց հատկությունների ուսումնասիրման համար: Մ-ներն առավելապես տարածված են մետաղամշակման արդյունաբերության մեջ՝ կռման, ծավալային և թերթային դրոշմման, ատամնանիվների հավաքման գործողությունների, մեխանիկական փորձարկումների և այլ նպատակների համար:

Դեռևս XV—XVI դդ. մետաղամշակման հետ կապ չունեցող տարբեր արհեստներում կիրառում էին ձեռքի հաղորդակով պտուտակաձև Մ-ներ: XVII դ. վերջին և XVIII դ. սկզբին պտուտակաձև Մ-ներն սկսեցին կիրառել ճնշմամբ մետաղների մշակման, մասնավորապես դրամահատման և մեդալների դրոշմման համար: XIX դ. կեսերին *դարբնոցա-դրոշմիչ արտադրությունում* լայն տարածում ստացան *հիդրավլիկական մամլիչները*:

Մ-ի հիմնական մասերն են. սողանը, հենոցը՝ սողանի ուղղորդիչներով ու սեղանով, հաղորդակը, կառավարման մեխանիզմները, մեքենայացման ու ավտոմատացման միջոցները, գործիքը: Գործիքի շարժական մասն ամրացվում է սողանին (որը կատարում է ետադարձ-համընթաց շարժում), անշարժ մասը՝ սեղանին: Շինվածքի ձևագոյացման համար նախապատրաստուկը դնում են գործիքի շարժական և անշարժ մասերի միջև ու ճնշում: Մ-ի գլխավոր պարամետրերն են. նոմինալ ճիգերը, սողանի շարժման ընթացքն ու արագությունը, սեղանի չափերը: Ըստ հաղորդակի տեսակի Մ-ները լինում են հիդրավլիկական, մեխանիկական (շուռտվիկային, պտուտակավոր, ֆրիկցիոն) և հիդրոմեխանիկական (նկ.): Կան նաև պնևմատիկ, էլեկտրամագնիսական, էլեկտրահիդրավլիկական Մ-ներ, որոնք լայն կիրառում չեն ստացել արդյունաբերության մեջ: Հիդրավլիկական Մ-ներում սողանը շարժվում է հեղուկի ճնշման տակ, իսկ մեխանիկական Մ-ներն աշխատում են շուռտվիկաշարժաթևային մեխանիզմների, արտակենտրոնակների, լծակների համակարգի առաջացրած ճիգերով: Ըստ նշանակման տարբերում են սողանի ուղղաձիգ (օրինակ, դրոշմման համար) և հորիզոնական (օրինակ, մամլման համար) շարժումով Մ-ներ: Ամենահզոր Մ-ները հիդրավլիկական Մ-ներն են: Դրանցից առավել խոշորը՝ դրոշմիչ Մ., զարգացնում է 735 *Մն* ճիգեր, շուռտվիկայինը՝ 100 *Մն*, իսկ պտուտակավորը՝ մոտ 125 *Մն*: Մ-ներով նյութերի մշակման ըսկըզբունքային առավելությունն այն է, որ պրոցեսը տեղի է ունենում առանց կտըրման, հետևաբար և առանց մնացուկների գոյացման: Բացի այդ, Մ-ները բնութագըրվում են բարձր արտադրողականությամբ և մշակվող դետալների լավ մեխանիկական հատկություններով:

Հայկ. ՍՍՀ-ում Մ-ներ արտադրում է Լենինականի դարբնոցա-մամլիչային սարքավորումների գործարանը:

*Վ. Մաղաթով*

**ՄԱՄԼՈՒՄ**, ճնշման միջոցով նյութերի մշակման պրոցես, որի հետևանքով տեղի է ունենում նյութի խտացում, ձևի փոփոխություն, հեղուկ և պինդ ֆազերի անջատում, մեխանիկական և այլ հատկությունների փոփոխություն: Սովորաբար կատարվում է *մամլիչներով*: Մ-ով ստանում են նախապատրաստուկներ և շինվածքներ մետաղներից, պոլիմերային նյութերից, փայտանյութից ևն: Մ. կիրառում են նաև ծավալային փխրուն նյութերի (բամբակ, մանվածք, խոտ) փաթեթավորման և երկրորդային հումքի (տաշեղ, աղբ, մնացուկներ) վերամշակման համար: «Մ.» տերմինը չի վերաբերում մամլիչների վրա կատարվող *կռման* և *դրոշմման* պրոցեսներին: Մ ե տ ա ղ ն ե ր ի Մ-ման հետևանքով ստացվում են կիսաֆաբրիկատներ և շինվածքներ՝ ձողերի, խողովակների, բարակապատ բաժակների և կափույրների տեսքով: Պրոցեսի ընթացքում փակ խոռոչում գտնվող նյութը արտասեղմվում է *մամլամայրի* անցքի միջով: Ձողիկների և խողովակների Մ. հիմնականում կատարվում է հորիզոնական մամլիչներով, իսկ ձևավոր շինվածքներինը՝ ուղղաձիգ շուռտվիկային մամլիչներով: Պ ո լ ի մ ե ր ա յ ի ն ն յ ու թ ե ր ի Մ. իրականացվում է մամլիչների վրա տեղադրված *մամլակաղապարներում*: Ըստ Մ-ման պրոցեսի ջերմաստիճանի տարբերում են տաք և սառը Մ.: Խ ո տ ի Մ-ման հետևանքով ցրուն խոտից մեխանիկական խտացման եղանակով ստացվում են տարբեր չափսերի և խտության կապոցներ: Մամլված խոտի ծավալը 5—8 անգամ փոքր է ցրուն խոտի ծավալից: Կապոցներում ավելի լավ են պահպանվում բույսի հեշտ փշրվող և առավել նուրբ ու արժեքավոր մասերը: Տես նաև *Բրիկետացում*, *Մամլած փայտանյութ*, *Փոշեմետալուրգիա*:




Մ ա մ լ ի չ ն ե ր ի ս կ զ բ ու ն ք ա յ ի ն ս խ ե մ ա ն ե ր ը. *ա*—հիդրավլիկական ուղղաձիգ, *բ*—հիդրավլիկական հորիզոնական, *գ*—շուռտվիկային, *դ*—ֆրիկցիոն, *ե*—հիդրոպտուտակավոր, *1.* աշխատանքային գլան, 2. պլունժեր, *3.* սողան, *4.* գործիք, *5.* հենոց, *6.* շուռտվիկի լիսեռ, *7.* շարժաթև, *8.* ֆրիկցիոն փոխանցում, *9.* իլ, *10.* մկրատ, *11.* շարժական սեղան

**ՄԱՄԼՈՒՔՆԵՐ** [< արաբ. *մուլք*—սեփականություն, բառացի՝ որևէ մեկին պատկանող (ստրուկ)], վաղ հասակում գերված կամ գնված, մահմեդականացված և ռազմական գործին վարժեցված սպիտակամորթ ստրուկներ: Եգիպտոսի *Էյուբյանները* XIII դ. սկզբին Մ-ից ստեղծեցին հատուկ զինվորական ընտրանի, որը դարձավ խաչակիրների դեմ պայքարող գլխավոր ուժը: Եգիպտոսի սուլթան Նաջմ ադ Դինի (1240—49) այրին (ըստ արաբ պատմիչների՝ ծագումով հայ)՝ Շաջար ադ Դորը (Մարգարտածառ), 1250-ին Մ-ի ձեռքով սպանեց գահաժառանգին և հըռչակվեց «Իսլամների սուլթանուհի»: Այնուհետև Աբբասյան խալիֆայի պահանջով ամուսնացավ Մ-ի զորապետ Այբակի (1250—57) հետ և գահը զիջեց նրան: Իշխանության գլուխ անցնելով՝ 9—12-հզ-անոց Մ-ի վերնախավը վերածվեց Եգիպտոսի ռազմա-ֆեոդալական ավագանու: Եգիպտոսում իշխել է Մ-ի երկու խըմբավորում: 1250—1382-ին իշխանության գլուխ կանգնած էր մեծ մասամբ թյուրքալեզու ռազմիկներից կազմված Բահրի (Ծովային) խմբավորումը: Բահրիների օրոք, հակառակ Մ-ի սովորության (սուլթանի մահից հետո իշխանությունը անցնում էր նրա մամլուքին), իշխանությունը, ժառանգական իրավունքով, հիմնականում գտնվել է սուլթան Կալաունի (1279—90) տոհմի ձեռքին: 1382-ի հեղաշրջմամբ իշխանության գլուխ անցավ Բորջի կամ Բուրջի (Աշտարակային) խմբավորումը, նրանում գերիշխող էին փոքրասիական և կովկասյան ծագմամբ ռազմիկները, հիմնականում՝ հայեր և չերքեզներ (ըստ արաբ պատմիչ Մակրիզիի, XIII դ. վերջին սուլթանապատկան 6700 Մ-ից 3700-ը): Մ-ի օրոք Եգիպտոսն ապրեց տնտեսական և մշակութային նկատելի վերելք: Մ. վերացրին խաչակիրների իշխանությունները Մերձավոր Արևելքում, նվաճեցին Սիրիան, Պաղեստինը, Լիբանանը, Հիջազը, Լիբիան և Նուբիան: Երկարատև պայքար մղեցին Հուլավյան *իլխանության* և նրա դաշնակից Կիլիկիայի հայկ. պե-

տության դեմ: Այն Ջալուդի (1260) և Մառիի (1266) ճակատամարտերում պարտության մատնեցին հայկ. զորքը, գրավեցին և ավերեցին Սիսը, այնուհետև՝ Անտիոքի խաչակիրների իշխանությունը, հայերին պարտադրեցին ծանր պայմանագիր (1268): 1275—76-ին և 1279-ին հայկ. զորքերը վտարեցին Կիլիկիա ներխուժած Մ-ին: Սակայն երկիրը Մ-ի հարձակումներից զերծ պահելու համար *Լևոն Գ* 1285-ին ստորագրեց նոր ծանր պայմանագիր: 1292-ին Մ. գրավեցին Հայոց կաթողիկոսական աթոռանիստ Հռոմկլան: Հետագա տասնամյակներում Մ-ի և Կիլիկիայի հայերի միջև պայքարն ընթացել է փոփոխակի հաջողությամբ: 1337-ին Մ. գրավեցին Կիլիկիայի գլխավոր նավահանգիստ Այասը, իսկ 1375-ին կործանեցին Կիլիկիայի հայկ. պետությունը: XV դ. Մ. գրավեցին Կիպրոսը: 1517-ին օսմանյան սուլթան Սելիմ I նվաճեց Եգիպտոսը, վերացրեց Մ-ի տիրապետությունը, թեև Մ. պահպանեցին իրենց ռազմ. կազմակերպությունը, մնացին հողատեր իշխաններ: Օսմանյան կայսրության թուլացման պայմաններում Մ. XVII դ. հզորացան, դարձան ինքնիշխան և 1768—1774-ի ռուս-թուրքական պատերազմի ժամանակ Ալի բեյի գլխավորությամբ փորձեցին ազատագրել Պաղեստինն ու Սիրիան: 1808-ին *Մուհամմեդ Ալին* Մ-ին զրկեց հողատիրական իրավունքից, իսկ 1811-ին բնաջնջեց նրանց:

*Գրկ.* Ս ու փ յ ա ն Հ., Եգիպտոսի հայ մեմլուքներն ու իշխանները Ֆաթիմյան շրջանին, Կաhիրե, 1928: Մ ա ր լ յ ա ն Գ., Ականավոր հայեր Եգիպտոսի մեջ, Կահիրե, 1947: А л - Х о л и А м и н, Связи между Нилом и Волгой в XIII—XIV вв., М., 1962; С е м е н о в а Л. А., Салах ад-Дин и мамлюки в Египте, М., 1966.

*Ե. Նաջարյան, Ա. Տեր-Ղևոնդյան*

**ՄԱՄԽԱՍԱԼՈՐԵՆԻ** (Prunus insititia), վարդազգիների ընտանիքի սալորենու ցեղի բույս: Երկարակյաց է, ապրում է 40—50 տարի: Բերքատու է դառնում տնկումից 3—4 տարի հետո: Ծառեր են՝ 5—6 *մ* բարձրությամբ, սաղարթը լայն-կլորավուն, երբեմն՝ լայն բրգաձև, բնի կեղևը՝ անհարթ, ճյուղերը՝ առանց փշերի: Տերևները երկսեռ են, մանր, սպիտակավուն, ինքնափոշոտվող (հակված է նաև խաչաձև փոշոտման): Պտուղները մանր են կամ միջին մեծության (15—30 *գ*),




Մ ա մ խ ա ս ա լ ո ր. *1.* ճյուղը պտուղներով, *2.* պտղի կտրվածքը

օվալաձև, մաշկը՝ սև մանուշակագույն երանգի՝ պատված բաց կապտավուն մոմաշերտով: Պտղամիսը՝ կանաչ դեղնավուն, հյութալի, քաղցրաթթվաշ համի: Օգտագործվում է թարմ և վերամշակված (մուրաբա, պովիդլո, չիր ևն): Մեկ ծառից ստացվում է 40—50 *կգ* բերք: Բազմանում է սերմերով, պատվաստներով և մացառներով: Ցրտադիմացկուն է, կայուն հիվանդությունների և վնասատուների նկատմամբ: Մշակվում է Եվրոպայում, ՍՍՀՄ-ում, ՀՍՍՀ-ում՝ Մեղրու, Եղեգնաձորի, Նոյեմբերյանի, Թումանյանի շրջաններում:

*Ա. Մարգարյան*

**ՄԱՄԽԻ,** մ ա մ խ ե ն ի (Prunus spinosa), վարդազգիների ընտանիքի սալորենու ցեղի բույս: Ոչ մեծ թուփ է, հազվադեպ՝ 4—8 *մ* բարձրությամբ ծառ: Սաղարթը լայն ու գնդաձև է, երբեմն՝ բրգաձև: Բունը և ճյուղերը փշոտ են: Տերևները խոշոր են, ատամնաեզր: Ծաղիկները՝ մանր, սպիտակ: Պտուղները մանր են (10—25 *գ*), կլոր, սև կապտավուն: Պտուղներից պատրաստում են մուրաբա, գինի, չիր ևն: Ցրտա-երաշտակայուն է: Բազմանում է մացառներով: Օգտագործվում է որպես ցածրաճ պատվաստակալ և ելակետային նյութ՝ ցրտա-չորադիմացկուն նոր սորտեր ստանալու համար: Վայրի Մ. աճում է ՍՍՀՄ կենտրոնական գոտում, Հյուսիսային Կովկասում, Արևմտյան Սիբիրում, Անդրկովկասում: ՀՍՍՀ-ում տարածված է Իջևանի, Նոյեմբերյանի, Թումանյանի, Գուգարքի, Եղեգնաձորի, Մեղրու շրջաններում:

*Ա. Մարգարյան*

**ՄԱՄՅԱՆ** Հենրիկ Արամի (ծն. 24.4.1934, Երևան), հայ սովետական նկարիչ: 1953—1959-ին սովորել է Երևանի գեղարվեստա-թատերական ինստ-ում (1960-ից՝



Հ. Մ ա մ յ ա ն. Դ. Վարուժանի «Հարձը» պոեմի նկարազարդում (1977)

նույն ինստ-ի դասախոս): Աշխատում է գրքային գրաֆիկայի, մոնումենտալ և հաստոցային գեղանկարչության ասպարեզներում: Ձևավորել է մոտ 90 գիրք: Վ. Դավթյանի «Աչք սիրո և սրի» (1968, լինոփորագրություն), Ե. Չարենցի «Ամբոխները խելագարված» (1968—77, ցինկոգրաֆիա), Լ. Շանթի «Հին աստվածներ» (1969—74, ցինկոգրաֆիա), Դ. Վարուժանի «Հարձը» (1979, ցինկոգրաֆիա, 1979-ին Մոսկվայում կայացած գրքի համամիութենական ցուցահանդեսում արժանացել է դիպլոմի): 1965-ին նկարիչ Հ. Մինասյանի հեղինակային համագործակցությամբ ստեղծել են Օշականի Մեսրոպ Մաշտոց եկեղեցու որմնանկարները: Անհատական ցուցահանդեսներ է ունեցել Մոսկվայում, Բաքվում (1975), Կիրովականում, Լենինականում (1980), Երևանում (1981): Կոմիտասի 100-ամյակին Բեյրութում կազմակերպված մրցույթում «Կոմիտաս» եռանկարն արժանացել է 2-րդ մրցանակի:

**ՄԱՄՈՆՏ** (Mammuthus primigenius), *փղեր* ընտանիքի անհետացած կաթնասուն: Ապրել է Եվրոպայում, Հյուսիսային Ասիայում և Հյուսիսային Ամերիկայում, պլեյստոցենի երկրորդ կեսում: Մահացել է մոտ 10 հզ. տարի առաջ: Չափերով (բարձրությունը՝ 2,5—3,5 *մ*) Մ. չի գերազանցել այժմ ապրող փղերին, քաշը՝ մինչև 7 *տ*:



Ծածկված է եղել խիտ բրդով և բրդատակի աղվամազով: Սնվել է խոտերով և թփուտներով, ձմռանը սնունդ է հայթայթել ձյան տակից՝ խիստ կորացված ժանիքների օգնությամբ: Մ. եղել է քարի դարում ապրող մարդու ժամանակակիցը: Սիբիրի խ-ում և Ալյասկայում հայտնաբերված են Մ-ի ավելի քան 40 դիեր, որոնք պահպանվել են հավերժական սառած ապարներում: Առավել լրիվ նմուշահատը պեղել է (1901—02) Պետերբուրգի ԳԱ արշավախումբը Բերյոզովկա գետի (Կոլիմայի վտակ) ափին: Այն ենթարկվել է անատոմիական, հյուսվածաբանական, կենսաքիմիական հետազոտությունների: Այդ Մ-ի պաճուճապատմքը և կմախքը ցուցադրված են ՍՍՀՄ ԳԱ Լենինգրադի կենդանաբանական թանգարանում: Ցուցանմուշ կա նաև ՀՍՍՀ ԳԱ երկրաբանական թանգարանում: Մ-ի մնացորդները կարևոր ղեկավարող բրածոներ են անթրոպոգենի նստվածքների երկրաբանական հասակը որոշելու համար: Մ-ների սառած շերտերում գտնված ժանիքներն օգտագործվում են գեղարվեստական իրերի պատրաստման գործում:

**ՄԱՄՈՆՏԻ ՔԱՐԱՆՁԱՎ** (Mammoth Cave), աշխարհի խոշորագույն կարստային քարանձավներից մեկը ԱՄՆ-ում, Լուիզվիլ քաղաքի մոտ (Կենտուկի նահանգ): Մ. ք-ի հետախուզված մասն ընդգրկում է 225 անցում, 47 բարձր գմբեթ, 23 հորան: Խորշերի ընդհանուր երկարությունը 74 *կմ* է: Մ. ք-ում կան ստորգետնյա գետեր, որոնք կապված են Գրին Ռիվեր գետի համակարգի հետ: Քարանձավներում բնակվում են կույր ծղրիդներ և սարդեր, ջրամբարներում՝ կույր ձկներ և խեցգետիններ: Տուրիզմի վայր է:

**ՄԱՄՐԻՉ** (Clematis), հ ո ր ո տ, պ ա տ ա ղ ի ճ, մ տ ր ա կ ա կ ո թ, գորտնուկազգիների ընտանիքի բազմամյա խոտերի կամ ծառանման բույսերի ցեղ: Ցողունը փաթաթվող է, մագլցող կամ ուղիղ: Տերևները հակադիր են, պարզ, ամբողջաեզր, եռմասնյա կամ կենտ փետրաձև:

Ծաղիկները մեկական են կամ ծաղկաբույլերով: Պտուղը բազմաընկուզիկ է: Հայտնի է Մ-ի ավելի քան 250 տեսակ, ՍՍՀՄ-ում՝ 18: ՀՍՍՀ-ում տարածված են ս ո վ ո ր ա կ ա ն Մ. (C. vitalba) և ա ր և ե լ յ ա ն Մ. (C. orientalis), որոնք աճում են համարյա ամենուրեք, գետերի և առուների ափերին, թփուտներում: Հողի նկատմամբ պահանջկոտ չեն, հեշտությամբ բազմանում են սերմերով, բարձր դեկորատիվ են և կիրառվում են ուղղաձիգ կանաչապատման մեջ:

**ՄԱՄՈՒԼ**, լայն նշանակությամբ՝ ամբողջ տպագիր արտադրանքը, նեղ, բայց տարածված իմաստով՝ պարբերական հրատարակություններ, մասնավորապես, թերթեր ու ամսագրեր: Լինելով մասսայական ինֆորմացիայի, պրոպագանդայի ու ագիտացիայի հիմնական միջոցներից մեկը, մամուլը նաև հասարակական, քաղ. պայքարի հզոր զենք է, լուսավորության, գիտելիքների տարածման, մշակույթի զարգացման, աշխարհայացքի ձևավորման կարևոր օղակ: Ձևավորվել է Եվրոպայում, XV դ. (գրքեր, բրոշյուրներ, թռուցիկներ են): XVII դ. սկսեցին հրատարակվել թերթեր ու ամսագրեր, XIX դ. կեսերին ստեղծվեցին *մամուլի գործակալություններ*: Սկզբնական շրջանում Մ. ծառայել է եկեղեցու գաղափարախոսությանը: Պատմական զարգացման ընթացքում, երբ եկեղեցին սկսեց աստիճանաբար կորցնել հասարակության հոգևոր կյանքի վրա ազդելու առաջնությունը, հանդես եկավ աշխարհիկ մամուլը, որն արտահայտում ու պաշտպանում էր տիրող դասակարգերի շահերը: Մարքսիզմի ծագման ու տարածման հետ միասին ծնվեց նաև նոր՝ հեղափոխական, պրոլետարական Մ.: Ռուսաստանում մարքսիզմի պրոպագանդման կարևոր միջոց էր Լենինի ստեղծած *բոլշևիկյան մամուլը*: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո սկսվեց նոր, ժող. Մ-ի ստեղծման պրոցեսը: 1917-ի նոյեմբ. 10-ի՝ Մ-ի մասին դեկրետով արգելվեց հակահեղափոխական մամուլի հրատարակությունը և բանվորա-գյուղացիական կառավարությանը հանձնվեցին խոշորագույն մասնավոր տպարանները: ՌԿ(բ)Կ VIII (1919), XI (1922), XII (1923) համագումարները որոշեցին Մ-ի կուսակցական ղեկավարման ձևերն ու մեթոդները, նրա հիմնական խնդիրները, տարածման ուղիներն ու միջոցները: Հարց էր դրվում Մ. կոմունիստական դաստիարակության գործում կուսակցության մարտական զենք դարձնելու, տնտ., կուսակցական ու սովետական շինարարության բոլոր բնագավառներում կոլեկտիվ ագիտատորի, պրոպագանդիստի ու կոլեկտիվ կազմակերպչի նրա դերը ապահովելու համար: Սովետական Մ-ի հիմնական սկզբունքներն են բարձր գաղափարայնությունը, կուսակցականությունը, ճշմարտացիությունը, ժողովրդայնությունը, մասսայականությունը: ՍՍՀՄ-ում կուսակցական թերթերը լինում են կենտրոնական, հանրապետական, մարզային, քաղաքային, շրջանային, կան նաև երիտասարդական, արհմիութենական, գերատեսչական, մասնագիտական և բազմատիրաժ թերթեր: Ամսագրերն ըստ բնույթի լինում են. կուսակցական, հասարակական-քաղաքական, սոցիալ-տնտեսական, գրական-գեղարվեստական են: Մեր երկրում, կուսակցության ամենօրյա հոգատարության շնորհիվ, մամուլը դարձել է աշխատավորական մասսաներին մոբիլիզացնելու, կոմունիստական շինարարության ու երկրի կառավարման գործում նրանց ակտիվությունն ապահովելու հզոր միջոց:

Սոցիալիստական մյուս երկրներում Մ. զարգանում է մարքսիստական-լենինյան գաղափարախոսության և տնտ. կառավարման նոր սկզբունքների հիման վրա, ծառայում է նոր հասարակական հարաբերությունների զարգացմանն ու ամրապնդմանը:

Զարգացող երկրների ազգային Մ. ամրապնդվում է գաղութային անցյալի ծանր հետևանքների և իմպերիալիստական գաղափարախոսության ազդեցության հաղթահարման պայմաններում:

Բուրժ. ժամանակակից քաղ. Մ. ծառայում է կապիտալիզմին, ամբողջովին ենթարկվում մոնոպոլիաների կամքին: Կապիտալիստական երկրներում բուրժ. Մ-ի գործունեությանը հակակշիռ է կոմունիստական և մյուս առաջադիմական, դեմոկրատական կազմակերպությունների Մ., որն արտահայտում է աշխատավորության շահերը (տես նաև *Ժուռնալիստիկա* և *Հրատարակչական գործ*):

**ՄԱՄՈՒԼ**, չափի միավոր *հրատարակչական գործում* և *պոլիգրաֆիայում*: Հ ե ղ ի ն ա կ ա յ ի ն Մ. գրական ստեղծագործության ծավալի չափման միավոր է և հավասար 40 հզ. տպագրական նիշի (տառ, կետադրական նշաններ, թիվ, ինչպես նաև բառերի միջակա բացատներ) կամ բանաստեղծական նյութի 700 տողի կամ 3 հզ. $սմ^2$ տպված գրաֆիկական նյութի (պատկերազարդում, քարտեզ են): Թ ղ թ ա յ ի ն Մ. հրատարակության թղթի քանակի հաշվառքի միավոր է: Թղթային Մ-ի ֆորմատը ՍՍՀՄ-ում սահմանված է ստանդարտով: Տ պ ա գ ր ա կ ա ն Մ. հրատարակության բնական ծավալի չափի միավոր է: Տպագրական Մ-ի պայմանական միավոր է համարվում 60×90 *սմ* չափսի թուղթը: Տպագրական Մ. կոչվում է նաև ֆիզիկական Մ. (70×90, 70×108, 84×108 *սմ*): Հ ա շ վ ա-հ ր ա տ ա ր ա կ չ ա կ ա ն Մ. տպագրական հրատարակության ծավալի հաշվառքի միավոր է և կազմում է 40 հզ. նիշ կամ 700 բանաստեղծական տող կամ 3 հզ. $սմ^2$ գրաֆիկական նյութ: Տպագրված ստեղծագործության ծավալը հաշվվում է հաշվա-հրատարակչական Մ-ով, որն ընդգրկում է գրական աշխատության իսկական ծավալը հեղինակային Մ-ով, բոլոր այլ կարգի տեքստային ու գրաֆիկական նյութերի ծավալը (խմբագրական առաջաբան, էջատիտղոս, էջահամար են), որոնք տեղավորված են հրատարակությունում: Հաշվա-հրատարակչական Մ. կիրառվում է հրատարակչական պլանավորման և հաշվարկի, խմբագիրների, տեխ. խմբագիրների, սրբագրիչների աշխատանքի չափը որոշելու համար:

**«ՄԱՄՈՒԼ»**, հասարակական, քաղաքական, գավեշտական եռօրյա հանդես (1869—70-ին՝ շաբաթական): Լույս է տեսել 1869—83-ին, Կ. Պոլսում: Տնօրեն-խմբագիր՝ Գ. Այվազյան: Հանդես է եկել պահպանողական հրատարակությունների, ազգային միասնականությունը պառակտողների, հատկապես հայ կաթոլիկ եկեղեցու գործունեության դեմ: Նյութեր է տպագրել Հայկ. հարցի ընթացքի, գավառների վիճակի, Վանի, Մուշի, Բաղեշի հայերի նկատմամբ քրդերի բռնությունների մասին, ծաղրել ժամանակի անընդունելի բարքերն ու սովորույթները: Ունեցել է գրական-բանասիրական բաժին, տպագրել թատերական տեսություններ, պոլսահայության ներքին կյանքին վերաբերող լուրեր: Նյութերի որոշ մասը հայատառ թուրք. է:

**ՄԱՄՈՒԼԻ ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆ**, տես *Դեմոկրատական ազատություններ*:

**ՄԱՄՈՒԼԻ ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹՅՈՒՆ**, պայմանագրային սկզբունքով *ինֆորմացիա* հավաքող, մշակող և թերթերին, հանդեսներին, ռադիոյին, հեռուստատեսությանը, հրատարակչություններին, կառավարական հաստատություններին, հասարակական կազմակերպություններին ու մասնավոր անձանց տրամադրող կազմակերպություն: Կապիտալիստական երկրներում Մ. գ. սովորաբար մասնավոր է, սոցիալիստական երկրներում՝ պետ. կամ հասարակական: Մ. գ-յան ծագումը կապված է պարբերական հրատարակությունների զարգացման հետ: 1835-ին Շ. Հավասը (Ֆրանսիա) ստեղծեց թերթերին ինֆորմացիա մատակարարող Հավաս գործակալությունը: Այս գործակալության Լոնդոնի աշխատակից Պ. Ռեյտերը 1851-ին կազմակերպեց մինչև այժմ գործող Ռեյտերը, իսկ Բեռլինի աշխատակից Բ. Վոլֆը՝ «Վոլֆի հեռագրական բյուրոն»: Ռուս. առաջին Մ. գ-ներն էին Ռուսաստանի հեռագրական գործակալությունը (ՌՏԱ, 1866), Միջազգային հեռագրական գործակալությունը (ՄՏԱ, 1872), Հյուսիսային հեռագրական գործակալությունը (ՍՏԱ, 1882): 1918-ին ստեղծվեց ՌՈՍՏԱ-ն (1925-ից՝ ՏԱՍՍ): 1961-ին հիմնվեց Նորություններ մամուլի գործակալությունը (ԱՊՆ): Սոցիալիստական երկրներում գործում են. ՊԱՊ (Լեհաստան), ՄՏԱ (Հունգարիա), ԱԴՆ (ԳԴՀ), «Պրենսա Լատինա» (Կուբա), ԲՏԱ (Բուլղարիա), ՄՈՆՑԱՄԷ (Մոնղոլիա) են գործակալություններ: Կապիտալիստական երկրների խոշոր գործակալություններն են. Ֆրանս. պրեսը (Ֆրանսիա), Ասոշիեյտեդ պրեսը և Յունայտեդ պրես ինթերնեշընըլը (ԱՄՆ), Կիոդո Ցուսինը (Ճապոնիա) են: Մ. գ. օգտագործում է ընդունող-հաղորդող ռադիոկայաններ, բազմականալ հեռուստահեռագրական կապ, տելետայպ, տելեքս, լուսահեռատիպ են:

**ՄԱՄՈՒԼԻ ՕՐ**, բոլշևիկյան կուսակցական-սովետական մամուլի ավանդական օրը: Տոնվում է ամեն տարի, մայիսի 5-ին, ի նշանավորումն *«Պրավդա»*-ի առաջին համարի լույս ընծայման (1912): Առաջին անգամ նշվել է 1914-ին, «Պրավդա»-ի երկրորդ տարեդարձի օրը: ՌԿ(բ)Կ Կենտկոմի որոշմամբ և կուսակցության XI համագումարի հավանությամբ 1922-ից մայիսի 5-ը («Պրավդա»-ի 10-ամյակի առթիվ)

համարվեց կուսակցական-սովետական մամուլի օր: Թերթի այդ օրվա համարում տպագրվեց Վ. Ի. Լենինի «Правда»-ի տասնամյա հոբելյանի առթիվ» հոդվածը: Մ. օ. ամեն տարի մեր երկրում նշվում է որպես սովետական մամուլի և հրատարակչական գործի նվաճումների ստուգատես:

**ՄԱՄՈՒԼՅԱՆ** Ռուբեն Զաքարի (ծն. 8.10. 1897, Թիֆլիս), հայազգի ամերիկյան ռեժիսոր: Ուսանել է Մոսկվայի և Լոնդոնի համալսարանների իրավաբանական ֆակուլտետներում, որոշ ժամանակ Մոսկվայում հաճախել է Ե. *Վախթանգովի* թատերական ստուդիան: 1920-ից Լոնդոնի, Փարիզի, Նյու Յորքի թատրոններում իրականացրել է շուրջ 60 դրամատիկական և

Կադր «Ծափահարություն» կինոնկարից (1933), ռեժ. Ռ. Մամուլյան

երաժշտական բեմադրություններ [«Աղմուկների սիմֆոնիան» (1922), Ջ. Գերշվինի «Պորգին և Բեսը» (1935), Ռ. Ռոջերսի «Օկլահոմա» (1943) ևն], որոնք արտահայտել են ռեժիսորի դեմոկրատական-ռեալիստական միտումները: Մ-ի երաժշտական բեմադրություններին բնորոշ է երգի, պարի, խոսքի, բեմադրական վառ հնարքների սերտ միասնությունը՝ միաձուլված հոգեբանական ճշմարտությանն ու ռիթմա-ոճական ցայտունությանը: Այդ բեմադրությունները մեծ ազդեցություն են գործել ամերիկյան երաժշտական թատրոնի և կինոյի ձևավորման ու զարգացման վրա: Մ. ստեղծել է նաև շուրջ մեկ ու կես տասնյակ կատակերգական, մելոդրամային, արկածային, երաժշտական ֆիլմեր: Կինոյում Մ-ի ստեղծագործությանը բնորոշ է հերոսների ներքնաշխարհի ընդգծումը, տեխ. և գեղարվեստական նորարարությունը, ռեժիսորական գյուտերը, նոր դերասանների հայտնաբերումը: Նրա «Ծափահարություններ» (1929) ֆիլմում առաջին անգամ կիրառվել է երաժշտության, աղմուկների, խոսքի ձայնագրումն առանձին-առանձին, որի շնորհիվ հաջորդ («Քաղաքային փողոցներ», 1931, «Դոկտոր Ջեքիլը և միստր Հայդը», 1932 ևն) ֆիլմերում Մ. հասել է իր ժամանակի համար արտասովոր պատկերա-հնչունային արտահայտչության: Մ. «Քաղաքային փողոցներ»-ում առաջինն է կիրառել արտակադրային խոսքը: «Բեկկի Շարպ» (1935, ըստ Ու. Թեքերեյի) գունավոր ֆիլմն առաջինն էր, ուր գույնը ստանձնել էր դրամատուրգիական և հոգեբանական խնդիրներ: Այս սկզբունքը Մ. ավելի բազմակողմանի կիրառել է «Արյուն և ավազ» (1941, ըստ Բ. Իբանիեսի) կինոնկարում: «Թագուհի Քրիստինան» մելոդրամա (1933), «Ուրախ բանդիտը» երաժշտական (1936), «Զորրոյի նշանը» (1940, սովետական էկրանում՝ «Խորհրդավոր նշան») ժապավենները հաջողություն են գտել շնորհիվ ռեժիսորական թարմ լուծումների, կինոխցիկի արտահայտչական հնարավորությունների ընդլայնող նոր հնարքների, տաղանդավոր դերասանների (Գ. Գարբո, Ֆ. Մարչ, Մ. Շըվալյե, Թ. Պաուեր և ուրիշներ) ձիրքի հմուտ բացահայտման: Միաժամանակ, Մ. տուրք է տվել շահութաբերության մրցավազքին, որի հետևանքով նրա շատ ֆիլմեր զրկվել են հասարակական հնչողությունից: Մ., որպես հյուր, մասնակցել է Մոսկվայի միջազգային կինոփառատոներին, այցելել է Սովետական Հայաստան:

*Է. Մանուկյան*

**ՄԱՄՌՈՒՆԵՐ**, մամռանմաններ, ցամաքային, հազվադեպ՝ քաղցրահամ ջրերի ինքնասուն բույսեր: Բաժանվում են 3 դասի՝ անթոցերոտայիններ, լերդամամուռներ և տերևայիններ կամ տերևացողունայիններ: Համեմատաբար պարզ կազմությամբ, բազմաբջիջ, բազմամյա կամ միամյա բույսեր են: Բարձրությունը՝ 1—50 *սմ*, ասիմիլյացիոն, փոխադրող և մեխանիկական հյուսվածքները մասնակի առանձնացված են: Սեռական բազմացման օրգանները իգական արքեգոնիումներն ու արական անթերիդիումներն են, անսեռ բազմացմանը՝ սպորոգոնիումները: Մ-ի զարգացման ցիկլը ուղեկցվում է հապլոիդ գամետոֆիտի վրա դիպլոիդ սպորոֆիտի առանձնացմամբ. դրա հետևանքով սեռական ու անսեռ սերունդները զարգանում են միևնույն բույսի վրա: Միատուն կամ երկտուն (երբեմն բազմատուն), չորադիմացկուն բույսեր են: Գամետոֆիտը բացի սեռական բազմացումից կատարում է նաև վեգետատիվ ֆունկցիա (ֆոտոսինթեզ, հանքային սննդառություն ևն): Սպորոֆիտը ավելի պարզ է, քան մյուս բարձրակարգ բույսերինը և երբեք ինքնուրույն օրգանիզմ չի առաջացնում: Որոշ Մ-ի մոտ սպորոֆիտ չի հայտնաբերված: Տարածված են ամենուրեք, բացի ծովերից, աղուտներից, սառցադաշտերից և ուժեղ էրոզացված հողերից: Մ. բույսերի զարգացման կույր ճյուղ են: Ենթադրում են, որ Մ. առաջացել են ջրիմուռներից կամ ռինիոֆիտներից: Հայտնի է Մ-ի 22—27 հզ. տեսակ, ՀՍՍՀ-ում՝ 400, տարածված գլխավորապես միջին լեռնային և անտառային շրջաններում: Մ. կազմում են տորֆի գլխավոր զանգվածը:

*Վ. Մանակյան*

**ՄԱՄՈՒՐՅԱՆ** Մատթեոս Հովհաննեսի (17.10.1830, Զմյուռնիա—2.1.1901, Զմյուռնիա), արևմտահայ դեմոկրատական գործիչ, հրապարակախոս, գրող, թարգմանիչ, բանասեր, պատմագետ, մանկավարժ: 1845-ին ավարտել է Զմյուռնիայի Մեսրոպյան վարժարանը, 1850-ին՝ Փարիզի Մուրադյան վարժարանը: 1851-ին Մ. *Աղաբեկյանի* հետ Զմյուռնիայում հիմնել է «Աղաբեկյան» ուսումնարանը: 1853-ին ուսուցչություն է արել Կ. Պոլսում, զորակոչվել բանակ և Ղրիմի պատերազմի ժամանակ աշխատել իբրև թարգմանիչ, 1856—57-ին եղել է Քեմբրիջի համալսարանի ազատ ունկնդիր: 1858-ին շրջագայել է Եվրոպայում, այցելել նաև Պետերբուրգ: 1860—65-ին եղել է Կ. Պոլսի հայոց պատրիարքարանի դիվանապետը: 1862-ին հանգանակություն է կատարել Զեյթունի ապստամբների օգտին, հրապարակել Կիլիկիայում Ազիզ փաշայի արյունահեղ քաղաքականությունը դատապարտող հոդվածներ: 1865—99-ին, ընդմիջումներով, եղել է Մեսրոպյան վարժարանի տեսուչը, դասավանդել անգլերեն, ֆրանսերեն, արաբերեն և համաշխարհային պատմություն: 1871—1901-ին Զմյուռնիայում հրատարակել է «*Արևելյան մամուլ*» գրական-քաղաքական հանդեսը:

1853-ից Մ. հրապարակախոսական հոդվածներով և թարգմանություններով հանդես է եկել «Մասիս», «Մեղու», «Ծաղիկ» և այլ պարբերականներում: 1850—1860-ական թթ. գրած իր բազմաթիվ հոդվածները ամփոփել է «Հայկական նամականի» (1872) և «Անգլիական նամականի կամ Հայու մը ճակատագիրը» (1881) հրապարակախոսական երկերում, որտեղ քննարկված են ազգային-ազատագրական պայքարի, Հայաստանի տնտ. զարգացման խնդիրներ: Մ-ի քաղ. դավանանքն արտահայտված է «Սև լեռին մարդը» («Արևելյան մամուլ», 1871—81) վեպում, որտեղ հետևելով Մ. *Նալբանդյանին*, նա հայ ժողովրդի ազատագրությունը կապել է ռուս. հեղափոխության հաղթանակի հետ: Պաշտպանելով Մ. Նալբանդյանի գործն ու գաղափարախոսությունը՝ Մ. իր ստեղծագործություններում անդրադարձել և զարգացրել է կնոջ ազատության, լեզվի, գրականության, կրոնի, բարոյագիտության ևն հարցերի վերաբերյալ նրա տեսակետները: Մ. դրականապես է գնահատել Փարիզի կոմունան, II և III Ինտերնացիոնալների գործունեությունը, արևմտահայ իրականության մեջ պրոպագանդել Կ. Մարքսի, Ֆ. Լասալի, Ա. Թյուրգոյի, Ա. Սմիթի, Դ. Ռիկարդոյի հայացքները: «Համառոտ ընդհանուր պատմություն դպրոցաց համար» (մաս 1—3, 1875—78), «Համառոտ պատմություն Հայոց մինչև մեր օրերն» (1887), «Մանր վեպեր ու դասեր քաղված մանր տղոց համար» (1876), «Բանալի հայերեն շարադրության» (1878), «Գիտելիք ու պարտիք տղայոց» (1879) են դասագրքերի հեղինակ է: Մ. հայերեն է թարգմանել Վոլտերի, Գյոթեի, Լեսինգի, Ա. Դյումայի, Ժ. Վեռնի, Է. Պոյի, Կ. Բոմարշեի, Վ. Սկոտի, Լ. Տոլստոյի և ուրիշ գրողների երկեր, ինչպես նաև «Հազար ու մի գիշեր» արաբ. հեքիաթները (6 հատորով): Մ. գրել է նաև դրամատիկական գործեր, մանկավարժական ևն բնույթի հոդվածներ:

Մ. XIX դ. 60—80-ական թթ. հայ ազգային-ազատագրական շարժման գաղափարախոսներից է, նրա պաշտպանած բուրժուա-դեմոկրատական գաղափարներն իր ժամանակի համար ունեցել են առաջադիմական նշանակություն:

*Երկ.* Երկ., Ե., 1966:
*Գրկ.* Ասատուր Հրանդ, Դիմաստվերներ, ԿՊ, 1921: Ղազարյան Հ. Մ., Մատ-

թեոս Մամուրյան, Ե., 1961: Կ ա ր ի ն յ ա ն Ա. Բ., Մ. Մամուրյանը մշակույթի պատմության մասին, Ե., 1973: *Հ. Ղազարյան*

**ՄԱՅԱ**, հնդկացի ժողովուրդ Մեքսիկայում (Յուկատան թերակղզի, 340 հզ., 1979) և Բելիզում (13 հզ.): Լեզուն պատկանում է մայա-կիչե լեզվաընտանիքին (տես *Մայա-սոկե լեզուներ*): Որոշ մասը գիտի նաև իսպաներեն: Կրոնը ձևականորեն կաթոլիկությունն է, բայց իրականում պահպանվում են մինչքրիստոնեական հավատալիքների վերապրուկներ: Այժմյան Մ-ների հիմնական զբաղմունքը հողագործությունն է: Մ. հվ-արլ. Մեքսիկայում, Հոնդուրասում և Գվատեմալայում եղած՝ Ամերիկայի հին քաղաքակրթություններից



«Թագուհի» (մայաների ճարտարապետական հարդարանքի հատված, Ուշմալ)

մեկի ստեղծողներն են: Հնագույն Մ-ները մշակել են եգիպտացորեն, լոբի, դդում, լոլիկ, արմատապտուղներ, բամբակ, պահել՝ հնդկահավեր և շներ (միսն օգտագործել են սննդի համար), զբաղվել են նաև որսորդությամբ, ձկնորսությամբ և մեղվաբուծությամբ: Մ. թ. I հազարամյակում Մ-ները կառուցել են քարակերտ շինություններով քաղաքներ (հայտնի է 100-ից ավելի քաղաք), որոնցից խոշորներն էին Տիկալը, Կոպանը, Չիչեն-Իցան, Ուշմալը: IX դ. դրանց մեծ մասը կործանվել է տոլտեկների և հնդկացի այլ ցեղերի ներխուժման հետևանքով: X դ. Յուկատանում առաջացել է նոր՝ մայատոլտեկյան պետություն, որը հետագայում տրոհվել է քաղաք-պետությունների: Հասարակության տիրապետող խավը եղել են զինվորական ավագանին ու քրմերը, զարգացել է ստրկությունը: Մ-ները պաշտել են հատկապես անձրևի և քամու աստվածությունը: Նրանք ստեղծել են իրենց նշանագրերը (տես *Մայա գիր*), գիտելիքներ են ունեցել մաթեմատիկայի, բժշկության, աստղագիտության բնագավառներում, թողել ճարտ. հոյակերտ կոթողներ (բուրգեր, տաճարներ ևն): Մ-ների քաջարի դիմադրության հետևանքով Յուկատանի նվաճումը (1527-ից) իսպանացիների կողմից տևական է եղել:

**ՄԱՅԱ ԳԻՐ**, ժամանակակից Մեքսիկայի (Յուկատան թերակղզի), Գվատեմալայի և Հոնդուրասի տերիտորիայում բնակված հնդկացի *մայա* ցեղերի գիրը, որ հայտնի է մ. թ. առաջին դարերից մեզ հասած գրավոր հուշարձաններով: Գործածվել է մինչև XVI դ.: Պահպանվել են 3 մեծ ձեռագրեր և բազմաթիվ արձանագրություններ՝ քարի ու խեցեղենի վրա: Մ. գ-ի բնույթը երկար ժամանակ մասնագետների վեճերի առարկա է եղել: Սովետական լեզվաբան Յու. Կնոռոզովը, շարունակելով Լ. դը Ռոնիի, Ս. Թոմասի ու Բ. Ուորֆի ուսումնասիրությունները, ապացուցել է, որ Մ. գ. բաղկացած է եղել գաղափարագրերից և հնչյունագրերից, ինչպես նաև դետերմինատիվներից: *Հ. Սամանգուլյան*

**ՄԱՅԱԿՈՎՍԿԻ** Վլադիմիր Վլադիմիրովիչ [7(19).7.1893, գ. Բաղդադի (այժմ՝ քտա Մայակովսկի, Վրաց. ՍՍՀ-ում)—14.4.1930, Մոսկվա], ռուս սովետական բանաստեղծ: Ծնվել է անտառապետի ընտանիքում [ծնողները և քույրերը երկար տարիներ ապրել են Հայաստանում, հայրը եղել է Ալեքսանդրապոլի (այժմ՝ Լենինական) անտառատնտեսության անտառապետի օգնական, իսկ 1889-ից՝ անտառապետ Վրաստանում]: Մ. սովորել է Քութայիսի գիմնազիայում: Հոր մահից հետո, 1906-ին, ընտանիքը տեղափոխվել է Մոսկվա, որտեղ Մ. ուսումը շարունակել է դասական գիմնազիայում: Շփվել է ուսանող-բոլշևիկների հետ, ընդունվել կուսակցության շարքերը, կոոպտացիոն կարգով մտել է ՌՍԴԲ(բ)Կ Մոսկվայի կոմիտեի կազմի մեջ (1908): 1908—09-ին Մ. երեք անգամ ձերբակալվել է: 1909-ին Բուտիրկյան բանտում գրել է իր առաջին բանաստեղծությունները: 1911-ին ընդունվել է Մոսկվայի գեղանկարչության, քանդակագործության և ճարտարապետության ուսումնարանը: Այդ շրջանում հրապուրվել է կուբո ֆուտուրիստների (տես *Ֆուտուրիզմ*) տեսությամբ ու գործնականով, «Պուշկինին, Դոստոևսկուն, Տոլստոյին արդիականության շոգենավից դուրս նետելու» նիհիլիստական կոչերով: Ֆուտուրիստների «Ապտակ հասարակական ճաշակին» (1912) ալմանախում առաջին անգամ տպագրվել են Մ-ու «Գիշեր» և «Առավոտ» (1912) բանաստեղծությունները: 1913-ին լույս է տեսել «Ե՛ս» առաջին գրքույկը: Թեև ֆուտուրիստների հետ համատեղ ելույթները, նրանց հետ շփումը իրենց նկատելի կնիքն էին դրել Մ-ու վաղ շրջանի ստեղծագործության վրա, սակայն այդ բուրժուա-դեկադենտական գրական հոսանքի շրջանակները նեղ էին բանաստեղծի համար: Դեռևս հեղափոխությունից առաջ նա ստեղծել էր այնպիսի գործեր, որոնք արտահայտում էին սոցիալական սուր խնդիրներ, բողոք պատերազմի և կապիտալիստական աշխարհի դեմ: Նա նախազգում էր հեղափոխությունը, երազում ներդաշնակ մարդու մասին («Մայրիկը և գերմանացիների կողմից սպանված երեկոն», 1914, «Ջեզ», 1915, բանաստեղծությունները, «Վլադիմիր Մայակովսկի» ողբերգությունը, բեմադրվել է 1913-ին, հրտ. 1914, «Վարտիքավոր ամպը», 1915, «Պատերազմն ու աշխարհը», 1917, «Մարդը», 1916—17, պոեմները ևն):

1914—19-ին Մ. ապրել է Պետրոգրադում, մտերմացել Մ. Գորկու հետ, որը հովանավորել է երիտասարդ բանաստեղծին, նկատելի ազդեցություն գործել նրա տաղանդի ձևավորման ու զարգացման վրա: Խնդությամբ դիմավորելով 1917-ի Հոկտեմբերյան հեղափոխությունը՝ Մ. առաջին իսկ օրերից ծավալում է ստեղծագործական եռուն գործունեություն: 1918-ին գրում է «Ներբող հեղափոխությանը», «Ձախ մարշ»-ը, «Միստերիա բուֆ»-ը՝ առաջին սովետական պիեսը, որը, իր իսկ



Վ. Վ. Մայակովսկի

բնութագրումով, «...մեր դարաշրջանի հերոսական, էպիկական և երգիծական պատկերն է»: 1919-ին, վերադառնալով Մոսկվա, աշխատել է Ռուսաստանի հեռագրական գործակալությունում՝ ՌՈՍՏԱ-ում: Երեք տարում նկարել է հազարից ավելի պլակատ և գրել կրկնակի ավելի բանաստեղծական տեքստ՝ պլակատների համար: Սովետական գրականության նշանավոր ստեղծագործությունը դարձավ «Վլադիմիր Իլյիչ Լենին» (1924) պոեմը, որը պատկերում է հեղափոխական պայքարի պատմության կարևորագույն իրադարձությունները և Լենինի կյանքի հիմնական ուղենիշները: Պոեմը տոգորված է առաջնորդի, կուսակցության և ժողովրդի միասնության գաղափարով: «Լա՛վ է» (1927) պոեմում Մ. ցույց է տվել սովետական իշխանության առաջին տարիներին կատարված փոփոխությունները: Էպոսն ու քնարերգությունը, հերոսականությունն ու սատիրան պոեմում կազմում են գեղարվեստական ամբողջություն: Ա. Լունաչարսկու բնորոշմամբ՝ պոեմը «Հոկտեմբերյան հեղափոխությունն է՝ բրոնզաձույլ»:

1920-ական թթ. եղել է Գերմանիայում, Ֆրանսիայում, Կուբայում, Մեքսիկայում, ԱՄՆ-ում, Լեհաստանում, Չեխոսլովակիայում: Բարձր գնահատելով արտասահմանյան տեխնիկայի նվաճումները, մշակույթն ու արվեստը՝ Մ. միևնույն ժամանակ խարազանել է կապիտալիստական աշխարհի արատներն ու հակասությունները («Փարիզ», 1924—25, «Վերսալ», «Բլեք էնդ ուայթ», «Բրոդվեյ», «Բրուկլինի կամուրջը», բանաստեղծություններ, «Ամերիկայի իմ հայտնագործումը», ակնարկ ևն): Հայրենասիրական մոտիվները հատկապես հնչեղ են «Ընկեր Նետտեին, շոգենավին և մարդուն» (1926), «Բանաստեղծություն սովետական անձնագրի մասին» (1929) և այլ գործերում: Մ-ու ստեղծագործության մեջ նշանակալի տեղ է գրավում երգիծանքը [«Կաշառակերները» (1926), «Երկչոտը» (1928), «Պոմպադուրը» (1928), «Կեղծապաշտը», «Անպետքության մասին», «Զորահարկանի խալտուրա» (1926)]: Մի շարք բանաստեղծություններում [«Ժողովամոլները» (1922), որն արժանացել է Վ. Ի. Լենինի դրական գնահատանքին ևն] և կատակերգություններում [«Փայտոջիլ» (1928), «Բաղնիք» (1929)] Մ. ծաղրել է բյուրոկրատիզմն ու քաղքենիությունը: Մ. գլխավորել է «ԼԵՖ» գրական խմբակը, խմբագրել «ԼԵՖ» («ЛЕФ», 1923—1925) և «Նովի ԼԵՖ» («Новый ЛЕФ», 1927—28) ամսագրերը: Մ-ի բանաստեղծական կտակը դարձավ «Ամբողջ ձայնով»-ը (1930)՝ հնգամյակի մասին ծրագրված, բայց չգրված պոեմի նախերգան-

քը: Վերջին տարիների անձնական կյանքի և գրական պայքարի բարդ իրավիճակը նրան հասցրեց ինքնասպանության:

Մ. պոեզիան սերտորեն կապել է քաղ. պայքարի հետ, ենթարկել աշխատավորության շահերին: Նա ռուս. պոեզիա է մտել որպես նորարար, այն հարստացրել նոր, հեղափոխական բովանդակությամբ ու արտահայտչական նոր միջոցներով: Մ. Գորկու հետ մեկտեղ դարձավ *սոցիալիստական ռեալիզմի* հիմնադիրը սովետական գրականության մեջ: Մ. մեծ ազդեցություն է գործել սովետական ժողովուրդների գրականության վրա, թարգմանվել ՍՍՀՄ և արտասահմանյան բազմաթիվ լեզուներով: Հայերեն թարգմանվել են Մ-ու գրեթե բոլոր հիմնական ստեղծագործությունները: Մ-ու անունով գյուղ կա ՀՍՍՀ Աբովյանի շրջանում:

*Երկ.* Собр. соч., т. 1—12, 1978—79; Ընտ. երկ., հ. 1—2, Ե., 1950: Հատընտիր, Ե., 1955: Հատընտիր, Ե., 1963 (երկհատորյակ), գիրք 1—2, Ե., 1972: Վլադիմիր Մայակովսկի: Բիբլիոգրաֆիա, Ե., 1954:

*Գրկ.* Գրիգորյան Հ., Վլադիմիր Մայակովսկի, Ե., 1970: Паперный З., О мастерстве Маяковского, М., 2 изд., доп., 1957; Перцов В., Маяковский. Жизнь и творчество, т. 1—3, М., 1976; Луначарский А., Вл. Маяковский-новатор, в его книге. Статьи о советской литературе, М., 1958; Катанян В., Маяковский. Литературная хроника, 4 изд., доп., М., 1961.

*Գ. Թաթոսյան*

**ՄԱՅԱԿՈՎՍԿԻ**, գյուղ Հայկական ՍՍՀ Աբովյանի շրջանում, շրջկենտրոնից 3 *կմ* հարավ-արևելք: Ծխախոտագործական-անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև պտղաբուծությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ,



Մայակովսկի

գրադարան, բուժկայան: Բնակիչների նախնիները եկել են Սալմաստ գավառի Հիջվազ գյուղից, 1829—30-ին: Անվանումն ստացել է ի պատիվ ռուս բանաստեղծ Վ. Մայակովսկու:

**ՄԱՅԱ-ՍՈԿԵ ԼԵԶՈՒՆԵՐ**, ամերիկյան հնդկացիական լեզվաընտանիք: Խոսողների թիվը՝ մոտ 3 մլն (1970): Ունի 3 լեզվաճյուղ. 1. մայա (մայա կիչե) լեզուներ՝ Հարավային և Հարավ-Արևելյան Մեքսիկայում, Գվատեմալայում և Բելիզում (հին մայա, յուկատեկյան մայա, հուացտեկյան, չոլ, կիչե և այլ լեզուներ), 2. սոկե-միշե լեզուներ՝ Հարավային Մեքսիկայում (սոկերեն, տապաչուլտեկերեն, վերակրուսերեն ևն), 3. տոտոնակյան լեզուներ՝ Արևելյան Մեքսիկայում (տոտոնակերեն, տեպեուաերեն): Որոշ լեզվաբաններ Մ-ս. լ-ի շրջանակը մեծացնում են՝ ընդգրկելով նաև այլ լեզուներ: Մ-ս. լ. ունեն հարուստ բաղաձայնական համակարգ, կոկորդային շփականներ, բառակազմությունը և բառափոխումը մեծ մասամբ կատարվում է կցականության միջոցով: Շարադասությունը կայուն է:

*Գրկ.* Кнорозов Ю. В., Письменность индейцев майя, М.—Л., 1963.

**ՄԱՅԴԱՆԵԿ** (Majdanek), Լյուբլին քաղաքի (Լեհաստան) արվարձան, որտեղ 1941-ի աշնանը ստեղծվել է մարդկանց զանգվածային ոչնչացման գերմանա-ֆաշիստական ճամբարներից մեկը: Ուներ «մասնաճյուղեր» Հարավ-Արևելյան Լեհաստանում (Բուձին, Պլաշուվ, Տրավնիկի, 2 ճամբար Լյուբլինում): *Նյուրնբերգյան դատավարության* տվյալներով Մ-ում ոչնչացվել է տարբեր ազգությունների 1,5 մլն մարդ: Մ. վերացրել է սովետական բանակը 1944-ին:

**ՄԱՅԵՐ** (Mayer) Յուլիուս Ռոբերտ (1814—1878), գերմանացի բժիշկ և ֆիզիկոս: Ավարտել է Տյուբինգենի համալսարանի բժշկության ֆակուլտետը (1838): 1839—1841-ին զբաղվել է բժշկությամբ: Իր առաջին՝ «Ուժերի քանակական և որակական որոշման մասին» հոդվածում (1841, հրատարակվել է 1881-ին) արտահայտած դրույթը իմաստով մոտ էր էներգիայի պահպանման օրենքին: Այդ օրենքը նա հստակ ձևակերպել է «Օրգանական շարժումը՝ կապված նյութափոխանակության հետ» աշխատությունում (1845), որտեղ տեսականորեն հաշվել է նաև *ջերմության մեխանիկական համարժեքը*: Ըստ Մ-ի պատկերացումների՝ շարժումը, ջերմությունը, էլեկտրականությունը ևն «ուժերի» (էներգիայի) որակապես տարբեր ձևեր են, որոնք հավասար քանակներով փոխարկվում են մեկը մյուսի: Էներգիայի պահպանման օրենքը նա կիրառել է նաև օրգանիզմներում ընթացող պրոցեսների վերաբերյալ, պնդելով, որ Երկրի վրա արեգակնային էներգիայի կուտակիչը բույսերն են, իսկ մյուս օրգանիզմներում տեղի է ունենում միայն նյութերի և «ուժերի» փոխակերպում: Ժամանակակիցները չեն հասկացել Մ-ի գաղափարները, և այդ հանգամանքը, ինչպես նա էներգիայի պահպանման օրենքի հայտնագործման առաջնության վիճարկումը, դրդեցին նրան ինքնասպանության փորձ կատարել (1850): Առաջինը Հ. *Հելմհոլցն* է կարողացել ճիշտ գնահատել Մ-ի աշխատանքը:

**ՄԱՅԵՐՈՎԱ** (Majerová) Մարիա (1882—1967), չեխ գրող: Չեխոսլովակիայի ժող. արվեստագետ (1947): ՉԿԿ անդամ 1921-ից: 1906—07-ին եղել է Սորբոնի համալսարանի ազատ ունկնդիր: Առաջին ստեղծագործություններում («Կուսությունն», 1907, վեպ, պատմվածքների ժողովածուներ) արտահայտել է բողոք ընդդեմ կապիտալիստական հասարակարգի: Հետագա գործերում բացահայտել է 1905—07-ի ռուս. հեղափոխությունից հետո Եվրոպայի լարված իրադրությունը («Հանրապետության հրապարակը», 1914), պատկերել է առաջին համաշխարհային պատերազմի իրադարձությունները, չեխ ժողովրդի պայքարն անկախության համար («Աշխարհներից լավագույնը», 1923), տվել է պրոլետարական ընտանիքի ողբերգական ճակատագիրն ու բանվոր մարդու հոգեկան աշխարհը («Բալ-



Մ. Մայերովա



Ա. Ս. Մայիլյան

լադ հանքափորի», 1938): Հիշատակելի է Մ-ի «Շչակ» (1935) հերոսապատումը, որտեղ ներկայացված է Չեխոսլովակիայի բանվորական շարժման զարգացումը XIX դ. կեսից մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Չեխոսլովակիայի ազատագրումից հետո Մ. եղել է սոցիալիստական հայրենիքի կառուցման գործուն մասնակիցը: Նրա վիպակների ու պատմվածքների ժողովածուներում («Կայծակի ուղին», 1951, «Վայրի Արևմուտք», 1954), ակնարկների գրքերում («Արծաթից դրվագված աղեղներ», 1964) արտահայտված է նոր մարդու հոգևոր աճը: ՍՍՀՄ-ի մասին բազմաթիվ ակնարկներն ամփոփված են «Հաղթական երգ» (1953) գրքում: Հայտնի է նաև որպես մանկագիր: Մ. չեխ գրականության մեջ սոցիալիստական ռեալիզմի հիմնադիրներից է:

Գոտվալդի անվ. պետ. մրցանակի դափնեկիր է (1955):

**ՄԱՅԻԼՅԱՆ** Անտոն Սարգսի [16(28).3. 1880, Թիֆլիս —20.4.1942, Բաքու], հայ սովետական կոմպոզիտոր, խմբավար, մանկավարժ, երաժշտական-հասարակական գործիչ: Ադրբ. ՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1930): Ընդհանուր կրթությունն ստացել է Թիֆլիսի Ներսիսյան դպրոցում, մասնագիտականը՝ Թիֆլիսի երաժշտական ուսումնարանում (1900—1904): Աշակերտել է Ք. Կարա-Մուրզային, Մ. Եկմալյանին, Ն. Կլենովսկուն, Ն. Նիկոլաևին: Ղեկավարել է Բաքվի Հայարտան երաժշտական սեկցիան, կազմակերպել թատերական-երաժշտական ստուդիա, երգչախմբեր, համերգներ տվել Անդրկովկասի հայաշատ քաղաքներում: 1910—17-ին խմբագրել և հրատարակել է «*Թատրոն և երաժշտություն*» հանդեսը: Գրել է «Սաֆա» օպերան (1933, լիբրետոն Մ-ի, բեմադրվել է Բաքվում, Ախունդովի անվ. օպերայի և բալետի թատրոնում, 1939), երաժշտ. կատակերգություններ, բալետ, սիմֆոնիա, վոկալ-սիմֆոնիկ, կամերային-գործիքային երկեր, մանկական օպերաներ (այդ թվում՝ «Գյուլնազ տատի հեքիաթը», ըստ Ղ. Աղայանի, 1906, «Չարաճճի Միկիչը», ըստ Հ. Թումանյանի, 1926), ռոմանսներ, երգեր, կատարել ժող. երգերի մշակումներ ևն: Իր գործունեությամբ նպաստել է Անդրկովկասի ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը: Մ-ի դուստրը՝ Էլզա Անտոնի Մ. (ծն. 21.10.1926, Թբիլիսի), կոմպոզիտոր է, դիրիժոր և մանկավարժ:

*Գրկ.* Մանուկյան Մ., Անտոն Մայիլյան, Ե., 1965: Атаян Р., Мурадян М.,

Татевосян А., Армянские композиторы, Е., 1956. *Մ. Մուրադյան*

**ՄԱՅԻՍԻ ՄԵԿ**, աշխատավորների միջազգային տոն, ամբողջ աշխարհի բանվորների համերաշխության օրը: Մ. մ. նշելու որոշումն ընդունել է II Ինտերնացիոնալի Փարիզի կոնգրեսը 1889-ին, ի հիշատակ Չիկագոյի բանվորների 1886-ի մայիսի 1-ի ելույթի և գործադուլի, որը դաժանորեն ճնշվել է: Որպես միջազգային տոն առաջին անգամ նշվել է 1890-ին, Ավստրո-Հունգարիայում, Գերմանիայում, Դանիայում, Բելգիայում, ԱՄՆ-ում, Ֆրանսիայում և այլուր: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո Մ. մ. դարձել է ավելի մասսայական և շատ երկրներում ձեռք է բերել ցայտուն արտահայտված հեղափոխական-հակակապիտալիստական ուղղվածություն: Մայիսմեկյան տոնակատարությունը սոցիալիստական երկրներում ընթանում է սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար աշխատավորների պայքարի, զարգացող ու գաղութային լծից ազատագրված երկրներում՝ իմպերիալիզմի ու ներքին հետադիմության դեմ պայքարի նշանաբանով: Զարգացած կապիտալիստական երկրներում աշխատավորներն այդ օրը հանդես են գալիս դեմոկրատական վերափոխումների պահանջներով:

Ռուսաստանում Մ. մ. առաջին անգամ նշվել է 1890-ին: 1891-ին Պետերբուրգի ս-դ. կազմակերպությունը, Մ. Բրուսնևի ղեկավարությամբ, կազմակերպել է բանվորների մ ա յ ո վ կ ա: Հետագայում այն նշվել է գործադուլների ու ցույցերի ձևով, «Կորչի՛ միապետությունը», «Կեցցե՛ հանրապետությունը» (1901) լոզունգներով: 1905-ի Մ. մ-ին բանվորներին են միացել նաև գյուղացիները ու զինվորները: Ռեակցիայի տարիներին այդ օրը նշվել է ժողովների և հավաքույթների ձևով: 1912-ից մայիսմեկյան տոնակատարությունը դարձել է ավելի մասսայական (1913-ին մասնակցել է 420 հզ. բանվոր, 1914-ին՝ 500 հզ.), 1917-ի Փետրվարյան հեղափոխությունից հետո այն նշվել է ազատ, աշխատավորներն այդ օրը հանդես են եկել «Ամբողջ իշխանությունը Սովետներին», «Կորչի՛ իմպերիալիստական պատերազմը» բոլշևիկյան լոզունգներով: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո սովետական աշխատավորները Մ. մ-ին իրենց համերաշխությունն են արտահայտում ամբողջ աշխարհի աշխատավորներին՝ նրանց հեղափոխական պայքարում: Հայաստանում Մ. մ. առաջին անգամ նշվել է 1919-ին, Երևանում:

**«ՄԱՅԻՍՄԵԿՅԱՆ» ՀԱՎԵՐ**, պ ե ր վ ո մ ա յ ս կ ի յ ե, մսաձվատու ցեղախումբ: Ստեղծվել է Խարկովի մարզի Մայիսի 1-ի անվ. թռչնաբուծական տնտեսությունում (հետագայում տոհմային աշխատանքները շարունակվել են Վորոնեժի և Պենզայի մարզերի տնտեսություններում), տեղական յուրլովյան հավերի և արտասահմանյան ռոդ-այլենդ ու վիանդոտ ցեղերի բարդ տրամախաչման եղանակով: Հաստատվել է 1950-ին: Փետրածածկն արծաթագույն է (պարանոցի, պոչի և թևերի ծայրափետուրներինը՝ գորշ): Վաղահաս են. ձվարկում են 6—6,5 ամսականից: Միջին ձվատվությունը՝ 142—180 հատ: Հասուն հավերի կենդանի զանգվածը՝ 2,6, իսկ աքաղաղներինը՝ մինչև 3 *կգ* է: Բուծվում են Մոսկվայի, Պենզայի և Կույբիշևի մարզերի, Կրասնոդարի, Բաշկիրիայի առանձին տնտեսություններում:

**ՄԱՅԻՍՅԱՆ**, գյուղ Հայկական ՍՍՀ Ախուրյանի շրջանում, շրջկենտրոնից 14 *կմ* հյուսիս-արևելք, Լենինական—Թբիլիսի երկաթուղու և Լենինական—Ղուկասյան խճուղու մոտ: Կարտոֆիլաբանջարաբուծական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև հացահատիկի, շաքարի ճակնդեղի, կերային կուլտուրաների մշակությամբ, անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կինո, հեռախոսային կայան, կապի բաժանմունք, մանկապարտեզ, կենցաղսպասարկման տաղավար, բուժկայան: Մ-ում են ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրության նորոգման գործարանը և ջերմատնային տնտեսությունների տրեստի ջերմոցային տնտեսությունը: Գյուղի շրջակայքում կան սև տուֆի հանքավայրեր: Մ-ում կանգուն է Տիրանավոր Ս. Աստվածածին եկեղեցին (VII դ.): Խաչաձև գմբեթավոր հորինվածքով փոքրաչափ այս եկեղեցին, որ բարձրանում է բազմաստիճան որմնախարիսխի վրա, կառուցված է սրբատաշ կարմիր տուֆի քարերից (քանդված են ծածկը և գմբեթը): Խաչաթևերից երեքը ուղղանկյուն են, իսկ արլ. ներսից կիսաշրջանաձև է, բավական խոր բեմով, որին հս-ից կից է փոքրիկ աբսիդով ավանդատուն: Պատերին պահպանվել են շինարար վարպետների նշաններ: Մուտքը երկուսն են՝ հվ. և արմ. (ունի VII դ. բնորոշ զույգ կիսասյուներով շքամուտք, որը հետագայում փակվել է շարվածքով): Եկեղեցու հվ-արմ. մասը XIX դ. վերակառուցման արդյունք է: *Մ. Հասրաթյան*



Մայիսյան

**ՄԱՅԻՍՅԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆ 1920**, համաժողովրդական զինված ապստամբություն Հայաստանում՝ դաշնակցականների և օտարերկրյա իմպերիալիստների տիրապետության դեմ: Կազմակերպել և ղեկավարել է Հայաստանի կոմունիստական կուսակցությունը: Նպատակն էր տապալել դաշնակցականների իշխանությունը և երկրում հաստատել սովետական կարգեր:

Ռուսաստանում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո Անդրկովկասում ստեղծված ներքին ու արտաքին բարդ իրապայմաններում բուրժուա-ազգայնական կուսակցություններին հաջողվեց օտարերկրյա իմպերիալիստների օգնությամբ զավթել իշխանությունը, երկրամասն անջատել Սովետական Ռուսաստանից և ստեղծել Հայաստանի, Վրաստանի ու Ադրբեջանի բուրժ. «անկախ» հանրապետություններ: Հայաստանում իշխանությունն անցավ *դաշնակցություն* կուսակցությանը:

Ազգամիջյան ընդհարումները, սովից ու համաճարակներից կոտորվող արևմտահայ գաղթականների հոծ բազմության առկայությունը, մաուզերիստների ու խմբապետների կամայականությունները, կառավարական պաշտոնյաների զեղծարարությունը Հայաստանը և հայ ժողովրդին դրել էին ծանր վիճակի մեջ: Սրվել էր դասակարգային պայքարը, որը հատկապես ուժեղացավ 1919-ի կեսերից, երբ անգլ. օկուպացիոն զորքերը հեռացան Անդրկովկասից:

ՌԿ(բ)Կ Կենտկոմի ու Կովկասյան երկրային կոմիտեի ղեկավարությամբ և օգնությամբ 1919-ի ամռանը կազմակերպորեն ամրապնդվեցին Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները, որոնց միավորման գործում մեծ դեր խաղացին նրանց 1919-ի սեպտեմբերյան խորհրդակցությունը և 1920-ի հունվարյան կոնֆերանսը: Ընտրվեց Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները միավորող օրգան՝ ՌԿ(բ)Կ Հայաստանի կոմիտե (Արմենկոմ) [տես *Ռուսաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության Հայաստանի կոմիտե*], որի կազմում ընդգրկվեցին Ս. Ալավերդյանը, Ս. Կասյանը, Ա. Մռավյանը, Դ. Շահվերդյանը, Հ. Կոստանյանը, Ղ. Ղուկասյանը, Ա. Նուրիջանյանը, Դ. Տեր-Սիմոնյանը, Ա. Գոգունցը, Ա. Մելքոնյանը, Ս. Մարտիկյանը և ուրիշներ: Տեղերում (Ալեքսանդրապոլ, Երևան, Կարս, Սարիղամիշ, Նոր Բայազետ, Ղազախ—Դիլիջան, Զանգեզուրի գավառ ևն) աշխուժացավ կուսակցական կազմակերպությունների գործունեությունը: Դրանց աշխատանքները ղեկավարում էին Բ. Ղարիբջանյանը, Ս. Ալավերդյանը, Ղ. Ղուկասյանը, Հ. Սարուխանյանը, Բ. Բատիկյանը, Ե. Մկրտումյանը, Հ. Կամարին, Բ. Հարությունյանը և ուրիշներ: Հատկապես զգալի էր Ալեքսանդրապոլի բոլշևիկյան ընդհատակյա կոմիտեի աշխատանքը (ղեկավար՝ Բ. Ղարիբջանյան): Կոմիտեն կենդանի կապ էր հաստատել Շիրակի ավազանի Քյավթառլու, Ղուլիջան, Փոքր Պարնի, Նորաշեն և այլ գյուղերի կոմբջիջների հետ: Երիտասարդության շրջանում մեծ աշխատանք էր ծավալել 1919-ի գարնանը ստեղծված Կոմունիստական երիտասարդական «*Սպարտակ*» միությունը (ղեկավարներ՝ Ղ. Ղուկասյան, Ա. Բուդաղյան, Ա. Խանջյան):

Կարմիր բանակի հաջողությունները Հյուսիսային Կովկասում և սովետական իշխանության հաղթանակը Ադրբեջանում առավել նպաստավոր իրադրություն ստեղծեցին Հայաստանում կոմունիստական կազմակերպությունների գործունեության համար: 1920-ի մայիսմեկյան ցույցերն ու միտինգները, որոնց կազմակերպիչն ու ղեկավարը ՌԿ(բ)Կ Արմենկոմն էր, առաջին գործնական քայլերն էին Մ. ա. նախապատրաստելու ուղղությամբ: Դրանք ամենուրեք անցնում էին դաշնակցականների կառավարությունը տապալելու և

սովետական իշխանություն հաստատելու լոզունգներով: Ալեքսանդրապոլում Ս. Մուսայելյանի հրամանատարության տակ գտնվող «Վարդան զորավար» զրահագնացքն արդեն մայիսի 2-ից վերածվել էր ապստամբության նախապատրաստման կենտրոնի: Դաշնակցական կառավարությունը ձեռնարկեց մի շարք միջոցառումներ՝ ապստամբությունը կանխելու և ճնշելու համար: Երևանում, Կարսում, Սարիղամիշում, Նոր Բայազետում և այլ վայրերում սկսվեցին «բանակցություններ» բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարների հետ՝ կեղծ խոստումներով փորձելով մասսաներին ետ պահել զինված ելույթներից: Այդ պայմաններում Ա. Խատիսյանի կառավարությունը հրաժարական տվեց: Ստեղծվեց նոր կառավարություն՝ Հ. Օհանջանյանի գլխավորությամբ: Հայտարարվեց ռազմ. դրություն: Գավառներ ուղարկվեցին կառավարության արտակարգ լիազորներ (գեներալ-կոմիսարներ): Սկսվեցին մասսայական ձերբակալություններ: Բանակը դրվեց մարտական վիճակի մեջ, ստեղծվեցին արտակարգ դատարաններ: Կոմունիստական կազմակերպությունները օրենքից դուրս հայտարարվեցին: Մայիսի 7-ին «Վարդան զորավար» զրահագնացքում տեղի ունեցավ ՌԿ(բ)Կ Արմենկոմի և տեղական մի շարք կազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցություն, որտեղ քննարկվեց զինված ապստամբության հարցը: Ապստամբությունը ղեկավարելու համար ստեղծվեց ռազմահեղափոխական կոմիտե (տես *Հայաստանի ռազմահեղափոխական կոմիտե 1920-ի մայիս*), որի կազմում ընդգրկվեցին Ս. Մուսայելյանը, Ա. Նուրիջանյանը, Ա. Մելքոնյանը, Դ. Տեր-Սիմոնյանը, Ա. Գոգունցը, Պ. Պետրոսյանը, Գ. Սարգսյանը, Ա. Տեր-Սահակյանը, Լ. Ուլիբեկյանը: Որոշվեց ապստամբությունն սկսել մայիսի 10-ին, Ալեքսանդրապոլում: Նույն օրն Ալեքսանդրապոլի հետ ապստամբություն բարձրացվեց նաև Կարսում, Սարիղամիշում և Քյաֆթառլու գյուղում, մայիսի 13—14-ին՝ Նոր Բայազետի գավառում, 14-ին՝ Շամշադինում, 19-ին՝ Իջևանում, 21-ին՝ Դիլիջանում, իսկ մայիսի վերջերին՝ Զանգեզուրի գավառի գյուղերում: Նշված վայրերում նույնպես ստեղծվեցին ռազմահեղափոխական կոմիտեներ:

Հայաստանի ռազմահեղափոխական կոմիտեն, Հայաստանի բանվորների, գյուղացիների և կարմիր զորքերի կամքով, տապալված հայտարարեց դաշնակցականների կառավարությունը և երկրում հռչակեց սովետական իշխանություն: Ժամանակ շահելու և ուժերը Ալեքսանդրապոլի ապստամբների դեմ կենտրոնացնելու նպատակով դաշնակցական կառավարությունը գեներալ Գամազովի միջոցով բանակցություններ սկսեց կարմիր զորքերի հրամանատար Ս. Մուսայելյանի հետ: Վերջինս, սակայն, կտրականապես հրաժարվեց ընդունել Գամազովի առաջարկները: Մերկացնելով դաշնակցականների մեքենայությունները, Ալեքսանդրապոլի կոմիտեն մայիսի 12-ին ապստամբներին ուղղած կոչում ընդգծում էր, որ «Հայաստանի հեղափոխական մասսաների փրկության ճանապարհը՝ միությունն է Անդրկովկասի և Ռուսաստանի հեղափոխական մասսաների հետ»: Սակայն ապստամբությունն սկսվել էր ոչ միաժամանակ, գործողությունները անջատ էին, այն ղեկավարող միասնական կենտրոն չկար, բացակայում էր կապը Արմենկոմի, ռազմահեղափոխական կոմիտեի և Ալեքսանդրապոլի բոլշևիկյան կոմիտեի, ինչպես նաև ապստամբական օջախների միջև: Ապստամբության ընթացքում Արմենկոմը ժամանակին նախաձեռնությունն իր ձեռքը վերցնելու համարձակություն հանդես չբերեց: Մայիսմեկյան ցույցերից անմիջապես հետո, երբ յուրաքանչյուր ժամը ճակատագրական նշանակություն ուներ բացահայտ քաղ. պայքարի կոչ անելու փոխարեն, Արմենկոմը մայիսի 1-ի գիշերվա նիստում որոշում ընդունեց «ամբողջովին անցնել ընդհատակյա աշխատանքի»՝ «դաշնակցական ապագա անխուսափելի հալածանքներից» զերծ մնալու համար: Երևանում, որտեղ բոլոր նախադրյալները կային ցույցերը զինված ապստամբության վերածելու համար, Արմենկոմը ապստամբության կոչ չարեց: Հայաստանի ռազմահեղափոխական կոմիտեն, որը փաստորեն գործեց միայն Ալեքսանդրապոլում, էստ էության, չկարողացավ իր ձեռքը վերցնել ամբողջ երկրում ապստամբության ղեկավարման գործը՝ հարձակման փոխարեն բռնելով պաշտպանողական դիրք: Բացի այդ, գյուղացիության որոշ մասը գործում էր տարերայնորեն, անկազմակերպ, որը մասամբ բացատրվում էր Հայաստանի մի շարք շրջաններում կոմունիստական կազմակերպությունների թուլությամբ: Բանակում կազմակերպական-քաղաքական անբավարար աշխատանքի հետևանքով զինվորների մի զգալի մասը ապստամբության վճռական պահին հանդես բերեց տատանում, իսկ մի մասն էլ դաշնակցության ազգայնական քաղաքականության կույր գործիքը դարձավ: Իսկ երբ դաշնակցական զորքերը, Սեպուհի գլխավորությամբ, մոտեցել էին Ալեքսանդրապոլին, «Վարդան զորավար» զրահագնացքում մայիսի 13-ին տեղի ունեցած ակտիվի նիստում որոշ ընկերներ արտահայտվեցին Ալեքսանդրապոլն առանց մարտի դաշնակներին հանձնելու օգտին: Մայիսի 14-ին Սեպուհի զորքերը մտան քաղաք և դաժան հաշվեհարդար տեսան նրանց հետ: Հայաստանի ռազմահեղափոխական կոմիտեն դադարեց գոյություն ունենալուց, իսկ Արմենկոմը ի վիճակի չեղավ ստանձնելու նրա ֆունկցիաները: Ապստամբները զրկվեցին ղեկավար կոորդինացնող կենտրոնից: Ապստամբության ղեկավարության թույլ տված կազմակերպական սխալների հետևանքով դաշնակներին հաջողվեց ճնշել նաև ապստամբական մյուս օջախները:

Մ. ա-յան ղեկավարներն ու հարյուրավոր մասնակիցներ նետվեցին բանտեր: Սովետական Ռուսաստանի և Սովետական Ադրբեջանի կառավարությունների, Վրաստանի կոմկուսի Կենտկոմի և Արմենկոմի դիմումները դաշնակցական կառավարությանը՝ դադարեցնելու հալածանքներն ու անօրինականությունները, արդյունք չտվեցին: Ս. Ալավերդյանը, Ս. Մուսայելյանը, Բ. Ղարիբջանյանը, Հ. Սարուխանյանը, Ե. Սևյանը, Ք. Մկրտչյանը, Ե. Մկըրտումյանը, Բ. Բատիկյանը, Բ. Հարությունյանը և շատ ուրիշներ խոշտանգումների ենթարկվեցին և գնդակահարվեցին:

Թեպետ Մ. ա. ճնշվեց, սակայն այն մեծ դաս հանդիսացավ հայ բոլշևիկների համար՝ հանուն սովետական կարգերի հաստատման մղած հետագա պայքարում: 1920-ի նոյեմբ. 29-ին Հայաստանում հաստատվեց սովետական իշխանություն, որը հայ ժողովրդին բերեց խաղաղություն, ազգային և սոցիալական վերածննդի հնարավորություն:

*Գրկ.* Խանջյան Ա., Մայիսյան ապստամբությունից դեպի նոյեմբերյան հաղթանակը, Ե., 1935: Մայիսյան ապստամբությունը Հայաստանում 1920—1930 (Հիշողություններ և դոկումենտների ժող.), Ե., 1930: Ղարիբջանյան Գ., Մայիսյան ապստամբությունը Հայաստանում 1920 թվականին, Ե., 1955: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան և սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում (Փաստաթղթերի և նյութերի ժողովածու), Ե., 1960: Գալոյան Գ., Անդրկովկասում սոցիալիստական ռևոլյուցիայի և կոմունիստական շինարարության պատմության կեղծարարության դեմ, Ե., 1961: Նույնի, Հերոսական մայիսից — հաղթական նոյեմբեր, Ե., 1980: Կարապետյան Հովհ. Ս., Մայիսյան ապստամբությունը Հայաստանում 1920 թ., Ե., 1961: Մելքոնյան Ա. Հ., Մայիսյան ապստամբության պատմության հարցի շուրջը, Ե., 1965: *Գ. Գալոյան*

**«ՄԱՅԻՍՅԱՆ ԲԱՐԵՆՈՐՈԳՈՒՄՆԵՐ» 1895**, «մայիսյան ռեֆորմներ», Օսմանյան կայսրության հայաբնակ վայրերում վարչական, դատական ևն վերափոխումների ծրագիր: Բեռլինի դաշնագրի 61-րդ հոդվածի (տես *Բեռլինի կոնգրես 1878*) համաձայն կազմել էին Կ. Պոլսում Մեծ Բրիտանիայի, Ռուսաստանի և Ֆրանսիայի դեսպանները ու ներկայացրել սուլթանի կառավարությանը 1895-ի մայիսի 11-ին (այստեղից էլ՝ «մայիսյան» անվանումը): Նախագիծը ներկայացվեց եվրոպական հասարակական կարծիքի ճնշման տակ, Արևմտյան Հայաստանում ընդլայնված ազատագրական շարժման (տես *Սասունի ապստամբություններ 1894, 1904*) դեմ թուրք. կառավարության գործադրած հալածանքների պայմաններում:

Նախագիծը հիմնականում նախատեսում էր հայաբնակ վեց վիլայեթներում (Էրզրում, Բիթլիս, Վան, Սվազ, Մամուրեթ ուլ-Ազիզ, Դիարբեքիր) կենտրոնական իշխանության ամրապնդում, հասարակական կյանքի զարգացում, արտադրության և տնտ. դրության կարգավորում, ինչպես նաև քրիստոնյաներին պաշտպանել քուրդ ցեղապետների կամայականություններից: Ըստ նախագծի նահանգների վալիները (նահանգապետները) պետք է նշանակվեին Օսմանյան կայսրության ընդունակ և բարեխիղճ պաշտոնյաներից, առանց կրոնի խտրության, 5 տարի ժամկետով: Մեծ տերությունների կիսապաշտոնական հովանավորությամբ Բ. Դռանը կից կազմվելու էր մշտական հանձնաժողով (վերահսկող մնայուն կոմիտե), որը պետք է հսկեր բարենորոգումների անթերի գործադրությունը: Բոլոր պաշտոնները (նաև ոստիկանությունը) պետք է բաշխվեին

մահմեդականների և քրիստոնյաների միջև. եթե պաշտոնյան մահմեդական էր, նրա օգնականը անպայման քրիստոնյա պետք է լիներ, և՝ ընդհակառակը: Բոլոր խորհուրդների (նահանգական ընդհանուր խորհուրդը, սանջակի, կազայի և նահիեյի), ինչպես և տարբեր հանձնախմբերի (այդ թվում՝ հատուկ դատաստանական), կեսը պետք է քրիստոնյա լիներ: Խաղաղ ժամանակ համիդիե զնդերը զենք ու նշանազգեստ չպետք է կրեին: Բարենորոգումների ենթակա էին նաև (վեց նահանգներից բացի) կայսրության մյուս հայաշատ վայրերը (օրինակ, Հաճընը՝ Ադանայի վիլայեթում, Զեյթունը՝ Հալեպի): Ծրագրի գործադրությունը հսկելու էր սուլթանից ընտրված և տերությունների հավանությանը արժանացած բարձր կոմիսարը:

Մ. բ-ի ծրագիրը, որը խիստ չափավոր էր, կազմված հիմնականում գործող թուրք. օրենքների սահմաններում և առանձին իրավունքներ չէր ընձեռում հայերին ու առավել ևս՝ բավարարում նրանց քաղ. պահանջները, այդուհանդերձ, հանդիպեց օսմանյան կառավարության դիմադրությանը: Սուլթանի անունից դեսպաններին ներկայացվեցին «դիտողություններ» և մի հակածրագիր. սկսվեց թուրքերի համար սովորական դարձած ձգձգումների քաղաքականությունը: Թուրք. կառավարությունը հույսը դնում էր մեծ տերությունների տարաձայնությունների վրա, որոնք հետապնդելով իմպերիալիստական շահեր Օսմանյան կայսրությունում, վճռական քայլերի չէին դիմի ինչ-որ մասնակի «բարենորոգումներ» անցկացնելու համար: Հայ քաղ. շրջանները փորձեցին ծրագրի գործադրությունը արագացնել խաղաղ միջոցներով (1895-ի սեպտ. 5-ի Բաբ Ալիի ցույցը ևն), որոնց օսմանյան կառավարությունը պատասխանեց հայերի ջարդով: Այդուհանդերձ Աբդուլ Համիդը հոկտ. 8-ին վավերացրեց «Մ. բ.»-ի փոքր-ինչ փոփոխված ծրագիրը, «բարձր կոմիսար» (Շաքիր փաշային) ուղարկեց Հայաստան բարենորոգումները «կենսագործելու» համար: Սակայն հայկ. կոտորածները վերսկսվեցին նոր թափով, որոնց զոհ գնաց 300 հզ. հայ (տես *Հայկական կոտորածներ 1895—1896*):

*Գրկ.* Լեո, Հայոց հարցի վավերագրերը, Թ., 1915: Հայաստանը միջազգային դիվանագիտության և սովետական արտաքին քաղաքականության փաստաթղթերում (1828—1923), Ե., 1972, էջ 130—148: *Ջ. Թորոսյան*

**ՄԱՅԻՍՅԱՆ ԲԶԵԶ,** թերթաբեղիկավորների ընտանիքի Melolontha սեռի *բզեզների* 2 տեսակի ընդունված անվանումը: Երկարությունը 22—29 *մմ* է: Մարմինը՝ սև, վերնաթևերը՝ կարմրագորշ, պատված խիտ, գորշ մազիկներով: Բզեզի 2 տեսակի թրթուրները դեղնասպիտակավուն են (երկարությունը՝ մինչև 60 *մմ*) և համարյա չեն տարբերվում: Արևելյան Մ. բ. (Melolontha hippocastani) տարածված է Եվրոպայում և Ասիայում: ՍՍՀՄ-ում՝ եվրոպական մասում (բացի Ծայր Հյուսիսից) և Սիբիրում՝ մինչև Անդրբայկալ: Արևմտյան Մ. բ. (Melolontha melolontha) հանդիպում է միայն Եվրոպայում, ՍՍՀՄ-ում՝ եվրոպական մասի արմ-ում և հվ-ում: Մ. բ. մեծ վնաս է հասցնում պտղատու, հատապտղային և անտառային ծառերի ու թփերի մատղաշ տնկիներին, ինչպես նաև բանջարանոցային ու դաշտային կուլտուրաներին (զանգվածային թռիչքի տարիներին լրիվ ուտում են տերևները): Բզեզների թռիչքն սկսվում է մայիսին, հվ-ում՝ ապրիլի վերջին: Թռիչքի սկզբից 10—20 օր հետո զուգավորվում են, ապա էգը հողում մի քանի անգամ ձվադրելուց (50—70 ձու ընդհանուր քանակով) հետո սատկում է: Առավել վնասակար են թրթուրները, որոնք սկզբից սնվում են հումուսով և խոտաբույսերի, ապա՝ ծառերի արմատներով: Հողում թրթուրի զարգացումը շարունակվում է 4—5 տարի: Հատկապես տուժում են սաձու մատղաշ տնկիները: Թրթուրներով վարակված տնկիները և սերմնաբույսերն արագ ոչնչանում են կամ դանդաղում է դրանց բնականոն զարգացումը:

Պայքարի միջոցներն են՝ առողջ և դիմացկուն տնկարկների աճեցումն ապահովող միջոցառումներ (մեկ կամ երկու տարվա ցել, ծառա- և թփատեսակների ճիշտ ընտրություն ցանքա- և տնկանյութի բարձրարժեք սորտերի օգտագործում), միջատասպաններով տնկարկների (բզեզի թռիչքի շրջանում), տնկումից առաջ տնկանյութի արմատների մշակում միջատասպան նյութերով և հողում թրթուրների ոչնչացում: *Հ. Թումանյան*

**ՄԱՅԻՍՅԱՆ ԵՐԿԱԹԳԾԻ ԿԱՅԱՐԱՆԻՆ ԿԻՑ ԱՎԱՆ,** Հայկական ՍՍՀ Ախուրյանի շրջանում, շրջկենտրոնից 12 *կմ* հյուսիս-արևմուտք: Մտնում է Հացիկի գյուղսովետի վարչական տերիտորիայի մեջ: Կայարանը կառուցվել է 1898-ին:

**«ՄԱՅԻՍՅԱՆ» ՍՈՎԽՈԶԻ 2-ՐԴ ՄԱՍԻՆ ԿԻՑ ԱՎԱՆ,** Հայկական ՍՍՀ Հոկտեմբերյանի շրջանում, շրջկենտրոնից 6 *կմ* արևելք: Խաղողագործական, պտղաբուծական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կինո, կապի բաժանմունք, մսուր-մանկապարտեզ, կենցաղսպասարկման տաղավար: Հիմնադրել են Ախուրյանի, Թալինի շրջաններից եկածները, 1932-ին:



«Մայիսյան» սովխոզի 2-րդ մասին կից ավան

**ՄԱՅԿՈՊ** (ադըղերեն՝ խնձորենու հովիտ), քաղաք, Ադըղեական ԻՄ վարչական կենտրոնը: Գտնվում է Կուբանի վտակ Բելայա գետի աջ ափին, Տուապսե—Ուստ—Լաբինսկ ավտոճանապարհին: 130 հզ. բն. (1980): Ունի երկաթուղային կայարան: Արդյունաբերության առաջատար ճյուղը սննդի արդյունաբերությունն է: Կան թղթի և փայտամշակման, թեթև արդյունաբերության ձեռնարկություններ, անտառառաքման և արդկապի, մետաղահատ հաստոցների և այլ գործարաններ, ՀԷԿ, մանկավարժական ինստ., 6 միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություն, էկոնոմիկայի, լեզվի, գրականության և պատմության Ադըղեական ԳՀԻ, պատմա-հայրենագիտական թանգարան, դրամատիկական թատրոն: Մ. հիմնադրվել է 1857-ին՝ որպես ռուս. ամրոց: Քաղաք է 1870-ից:

**ՄԱՅԿՈՊՅԱՆ ՄՇԱԿՈՒՅԹ,** մ. թ. ա. III հազարամյակի մշակույթ Հյուսիսային Կովկասի նախալեռներում: Անվանումն ստացել է Մայկոպյան դամբարանաբլուրից: Ներկայացված է բազմաթիվ դամբարանաբլուրներով, երբեմն՝ ամրացված բնակատեղիներով: Մ. մ-ի ուշ շրջանում երևան են եկել քարե դամբարաններ, այդ թվում՝ դոլմեններ: Աշխատանքային հիմնական գործիքներն ու զենքերը եղել են քարե զայլիկոնված կացինները, դանակի շեղբերը, մանգաղներն ու նետասլաքները, պղնձե կացինները, արորը, եղանները, դաշույնները, նիզակի ծայրերը: Մ. մ-ին հատուկ է կարմիր, փայլեցված, երբեմն՝ զարդարուն խեցեղենը: Մի շարք զարդեր ցույց են տալիս Մ. մ-ի կապը Արևելքի երկրների հետ: Մ. մ-ի ցեղերն ապրել են նախնադարյան համայնական հասարակարգում: Որոշ դամբարանների հարուստ գտածոները վկայում են գույքային անհավասարության մասին:

**ՄԱՅՄԵԽ,** Մայմեխ գլխավոր, Ջիթահանից սար, լեռնազագաթ Փամբակի լեռնաշղթայի միջին մասում,



Մայմեխ լեռը

Կիրովական քաղաքից հարավ: Բարձրությունը 3094 *մ* է: Կազմված է վերին էոցենի պորֆիրիտներից, տուֆաբրեկչիաներից, կրաքարերից, կոնգլոմերատներից: Գագաթային մասը էրոզիայի հետևանքով մասնատվել է առանձին բարձունքների: Ծածկված է նոսր անտառներով: Լանջերին կան բարձրախոտային ափաստաններ տեղամասեր:

**ՄԱՅՄՈՆԻԴ** (Maimonides) (իսկականը՝ Մոշե բեն Մայմոն) (1135—1204), հրեա փիլիսոփա: Ծնվել է Իսպանիայում, 1165-ից բնակվել Եգիպտոսում, եղել պալատական բժիշկ: Համադրելով հայտնությունը և հայեցողությունը, Աստվածաշնչի այլաբանական և Արիստոտելի ուսմունքի արաբ մտածողների մեկնաբանություն-ները՝ Մ. իր ռացիոնալիզմով և հավատը հրաշքի տարրերից մաքրելու ձգտմամբ հակադրվել է կրոնական ուղղափառությանը, որի համար հալածվել է: Մ-ի «Տատանվողների դաստիարակ» (1190, արաբ.) երկը ազդել է ուշ սխոլաստիկայի (հատ-

կապես Ալբերտ Մեծ և Թովմա Աքվինացի) վրա:

**ՄԱՅՆ** (Main), գետ ԳՖՀ-ում, Հռենոսի աջ վտակը: Երկարությունը 524 *կմ* է, ավազանը՝ 27,2 հզ. *կմ*²: Կազմվում է Ռոտեր-Մայն (սկիզբ է առնում Ֆրանկոնյան Ալբից) և Վեյսեր-Մայն (Ֆիխտել լեռներից) գետերի միախառնումից: Մեծ մասամբ հոսում է նեղ հովտով, ապա՝ հարթավայրով: Ջրառատ է փետրվար-մարտին: Տարեկան միջին ծախսը գետաբերանում 170 *մ*³/*վրկ* է: Նավարկելի է գետաբերանից 400 *կմ*: Մ-ի ավազանը Լյուդվիգս ջրանցքով միացած է Դանուբի ջրային ուղիների համակարգին: Մ-ի ափին են Մայնի Ֆրանկֆուրտ և Վյուրցբուրգ քաղաքները:

**ՄԱՅՆԻՆԳԵՆԻ ԹԱՏՐՈՆ**, գերմանական թատրոն: Ստեղծվել է XVIII դ. վերջին, Մայնինգենում: Սկզբում գործել են օպերային և դրամատիկ խմբեր, 1861-ից՝ միայն դրամատիկական թատերախումբ: Համաշխարհային հռչակ է վայելել XIX դ. 60—90-ական թթ.: Թատրոնի ստեղծագործական կյանքի բարձրակետը կապված է հերցոգ Գեորգ II-ի (զբաղվել է հիմնականում ներկայացումների ձևավորմամբ) և հատկապես ռեժիսոր Լ. Կրոնեկի գործունեության հետ: Նրանց օգնել է դերասանուհի Է. Ֆրանցը: 1874—90-ին թատրոնը հյուրախաղերով հանդես է եկել Մեծ Բրիտանիայում, Բելգիայում, Նիդերլանդներում, Ավստրո-Հունգարիայում, Լեհաստանում, սկանդինավյան երկրներում, Եգիպտոսում, Ռուսաստանում (1885, 1890): Խաղացանկը (41 պիես) հատկապես կազմված էր դասական դրամատուրգիայի երկերից՝ Շիլլերի «Օռլեանի կույսը», «Մարի Ստյուարտ», «Ավազակներ», «Վալլենշտայնի ճամբարը», Շեքսպիրի «Հուլիոս Կեսար», «Համլետ», «Մակբեթ», «Վենետիկի վաճառականը»: Ներկայացվել են նաև Գ. Է. Լեսինգի, Ֆ. Գրիլպարցերի, Մոլիերի, Ջ. Բայրոնի, Յո. Գյոթեի, Հ. Իբսենի պիեսները: Մ. թ. զարգացրել է Ֆ. Դինգելշտեդի և Է. Դևրիենտի, այսպես կոչված, «գեղանկարչական ռեժիսուրայի» ավանդույթները»՝ առաջնակարգ նշանակություն տալով ներկայացման բեմադրական կուլտուրային, պատմական, ազգագրական և կենցաղային հավաստիությանը: Թատրոնը հետևել է դերասանական անսամբլային խաղի սկզբունքին, բոլոր բաղադրատարրերը ենթարկել միասնական մտահղացմանը, մասսայական տեսարաններին հաղորդել արտահայտիչ մշակվածություն:

Ա. Մայոլ (գծանկարը՝ Մ. Դենիի)

**ՄԱՅՈԼ** (Maillol), Արիստիդ, Ժոզեֆ Բոնավենտյուր (1861—1944), ֆրանսիացի քանդակագործ: 1882—86-ին սովորել է Փարիզի Գեղեցիկ արվեստների դպրոցում: Ազդվել է Պ. *Գոգենից*, հարել «նաբի» խմբակցությանը, կատարել գոբելենների էսքիզներ: 1890-ական թթ. 2-րդ կեսից ստեղծել է «մոդեռն» ոճի հաստոցային ոչ մեծ քանդակներ: Ստեղծագործական հասուն շրջանում (1900-ական թթ.) ձգտել է զանգվածների ծավալապլաստիկական կառուցիկության և ընդհանրականության, ուրվագծի սահունության («Գիշեր», 1902—1909, բրոնզ, մասնավոր հավաքածու, Փարիզ, «Մանյակով Վեներան», 1930, Թյուիլրի պարտեզ, Փարիզ): Հիմնականում պատկերելով կանանց մարմիններ (մարմար, քար, բրոնզ), դրանցում մարմնավորելով գեղեցիկ մարդու իր իդեալը, միաժամանակ հաղորդել է կամ հայեցողական հանգստի զգացողություն («Միջերկրածով», 1902—05, բրոնզ, մասնավոր հավաքածու, ԱՄՆ), կամ դինամիզմ («Իլ-դե-Ֆրանս», բրոնզ, 1920—25, Պտի-Պալե թանգարան, Փարիզ): Մ. կերպարների խորհրդանշական բովանդակությունը համադրել է արդիականության, իսկ գեղարվեստական լուծումը՝ միջնադարի հետ (առաջին համաշխարհային պատերազմում ընկածների հիշատակին կանգնեցված հուշարձաններ, XIX դ. վերջի նշանավոր մարդկանց մոնումենտներ): «Կաշկանդված գործողություն» քանդակի (բրոնզ, 1906, ժամանակակից արվեստի ազգային թանգարան, Փարիզ) կնոջ հզոր մարմինը բացահայտում է Լ. Օ. Բլանկիի կյանքի պաթոսը, ներդաշնակության գաղափարը մարմնավորող նիմֆան՝ Պ. Սեզանի ստեղծագործական որոնումների նպատակը (Հուշարձան՝ Պ. Սեզանին, քար, 1912—1925, Թուիլրի պարտեզ): Դեկորատիվ բնույթի աշխատանքներում («Պոմոնա», բրոնզ, 1910, Ա. Ս. Պուշկինի անվ. կերպարվեստի թանգարան, Մոսկվա) կաբնորոշված են զգայականությունը, մարդու և բնության միասնության բացահայտումը: Մ. հայտնի է նաև մանրաքանդակներով, գծանկարներով, փորագրություններով և վիմագրություններով: Խորը ռեալիզմով նրա մարդասիրական արվեստը մեծ ազդեցություն է ունեցել XX դ. նշանավոր քանդակագործների վրա:



Ա. Մայոլ. Հուշարձան՝ նվիրված Սեզանին (1912—25, Թյուիլրի այգի, Փարիզ)

*Գրկ.* Терновец Б., Майоль, М., 1935.

**ՄԱՅՈԼԻԿԱ** (իտալ. maiolica, < Majolica — Մալիորկա կղզու հին անվանումից, որի վրայով Իտալիա էր բերվում իսպանա-մավրիտանական խեցեղեն), 1. XV—XVII դդ. գունավոր ծակոտկեն մակերեսով և հում, անթափանցիկ կապարե *ջնարակի* վրա կատարված, ուղղումներ չվերցնող, սյուժետային զարդանկարով իտալ. խեցեղեն իրեր (Ֆլորենցիայի, Սիենայի, Ուրբինոյի և այլ արվեստանոցների արտադրանքը): 2. Լայն առումով՝ գունավոր թրծված կավե իրեր, ջնարակապատ, խոշոր ծակոտկեն մակերեսով: Տարածված էր Հին Արևելքի երկրներում (Եգիպտոս, Բաբելոն, Իրան, Հայաստան), միջին դարերում՝ Միջին, Կենտրոնական և Առաջավոր Ասիայի երկրներում, XIV—XVIII դդ.՝ Եվրոպայի երկրներում (Իսպանիա, Գերմանիա, Ֆրանսիա): Հին Ռուսաստանում հայտնի էր XI դարից: Գեղարվեստական պրակտիկայում Մ. են անվանում նաև գունավոր ջնարակներով պատված հախճապակյա գունավոր կամ սպիտակ խեցեղենը:

**ՄԱՅՈՆԵԶ** (ֆրանս. mayonnaise). 1. սառը սոուս՝ պատրաստված բարձրորակ բուսական յուղի, ձվի դեղնուցի, քացախի, մանանեխի, շաքարի, երբեմն նաև այլ համեմունքների խառնուրդից: 2. Այդ սոուսով համեմված ձկան, մսի սառը կերակրատեսակ:

**ՄԱՅՈՐ** (Major) Տամաշ (ծն. 1910, Բուդապեշտ), հունգար դերասան, ռեժիսոր, հասարակական գործիչ: ՀԺՀ ժող. արտիստ (1950): ՀՍԲԿ անդամ 1942-ից: 1957—1966-ին ՀՍԲԿ ԿԿ անդամ: 1945—62-ին՝ Բուդապեշտի Ազգային թատրոնի դիրեկտորը, 1962-ից՝ գլխավոր ռեժիսորը: Մ-ի գործունեությունը նպաստել է հունգ. առաջադիմական ռեալիստական թատերարվեստի ամրապնդմանը: Մ-ի ներկայացումներին բնորոշ է սոցիալական խոր վերլուծությունը: Պրոպագանդել է Կ. Ստանիսլավսկու սիստեմը: Լավագույն դերերից են՝ Իվան Վասիլևիչ (Բուլգակովի «Իվան Վասիլևիչ»), Լյուցիֆեր (Մադաչի «Մարդու ողբերգությունը»): Բեմադրել է Գորկու «Թշնամիներ» (1949), Մադաչի «Մարդու ողբերգությունը» (1955, 1960, 1964), Բրեխտի «Բարի մարդը Սեզուանից» (1972): 1941-ից նկարահանվում է կինոյում: 1947-ից Հունգ. թատերական և կինոարվեստի բարձրագույն դպրոցի պրոֆեսոր: Արժանացել է Կոշուտի անվ. մրցանակների (1948, 1955):

**ՄԱՅՈՐ** (լատ. major — ավելի մեծ, ավագ), ավագ սպայի զինվորական կոչում ՍՍՀՄ-ի և այլ երկրների զինված ուժերում: ՍՍՀՄ զինված ուժերում Մ. կոչումը հաստատվել է 1935-ի սեպտ. 22-ին: ՍՍՀՄ ռազմածովային նավատորմում Մ-ի կոչմանը համապատասխանում է III կարգի կապիտանի կոչումը (տես *Կոչումներ զինվորական*):

**ՄԱՅՈՐԱՏ** (ուշ լատ. majoratus, < լատ. major — ավագ), ավագության իրավունք, ըստ որի ընտանիքի (տոհմի, նահապետության) անշարժ գույքի (հող, տանուտիրություն ևն) *ժառանգման իրավունքը* արտոնվում է ավագ որդուն: Առաջին անգամ վավերագրվել է ստրկատիրական իրավունքում (Հնդկաստանում, Հին Հունաստանում ևն)՝ ազնվական ընտանիքների հզորությունը պահպանելու նպատակով: Ֆեոդալիզմի դարաշրջանում Մ. տարածվել է Անգլիայում, Գերմանիայում, Ֆրանսիայում (XI—XIII դդ.): Ռուսաստանում պահպանվել է մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Ըստ Մ-ի, կրտսեր որդիները *ավատը* ժա-

ռանգելու իրավունքից զրկվում էին: Ֆրանսիայում կիրառվել է նաև գյուղացիական ընտանիքում (ավագ որդին ժառանգում էր հողային տիրույթի 2/3): Բուրժ. իրավունքը մերժում է Մ.՝ համարելով այն ժառանգման իրավունքի սահմանափակում: Մ-ի իրավունքը առավել երկար պահպանվել է Մեծ Բրիտանիայում:

Հայաստանում ավագության իրավունքը ծագել և զարգացել է որպես սովորույթ: Վաղ ավատական Հայաստանի աշխարհիկ և կանոնական իրավունքով ավագության ինստ. չի ամրապնդվել, սակայն գործնականում կիրառվել է: Փավստոս Բուզանդի, Եղիշեի, Ստեփանոս Օրբելյանի, Մխիթար Գոշի վկայությամբ նախարարության (Արշակունիներ, Մամիկոնյաններ ևն) հողային տիրույթը տոհմի միասնական և անբաժանելի ունեցվածքն էր, գույքի նկատմամբ ճանաչվում էր ավագ որդու (*նահապետ*, *նախարար*, *տանուտեր*) իրավունքը: Օրինակ, ըստ Փավստոս Բուզանդի, Արշակ Բ թագավորը Մամիկոնյան տոհմի նահապետ է կարգել Վարդանին («զՎարդան զերէց եղբայրն ի նահապետութեանն ազգին իւրեանց»): Պետականության կորստից հետո ավագության ինստ. երկար ժամանակ պարսկ., սկզբնական շրջանում նաև բյուզանդ., արքունիքում հայերի ավագության իրավունքը հարգվել է: Հայ գյուղական կենցաղում պահպանվել է մինչև XIX դ. վերջը:

*Գրկ.* Սամուելյան Խ., Հին հայ իրավունքի պատմություն, հ. 1, Ե., 1939, էջ 193—194: Адонц Н., Армения в эпоху Юстиниана, СПБ, 1908; Сукиасян А. Г., Общественно-политический строй и право Армении в эпоху раннего феодализма, Е., 1963, с. 104—105, 453—54, 477.

*Մ. Հովհաննիսյան*

**ՄԱՅՈՐԴՈՄ** (< ուշ լատ. major domus — տան ավագ), բարձրագույն պաշտոնյա Ֆրանկական պետությունում, *Մերովինգների* ժամանակ (V դ. վերջ — VIII դ. կես): Սկզբում նշանակվում էր թագավորից և գլխավորում արքունի վարչությունը: Ֆեոդալականացման ընթացքում, թագավորական իշխանության թուլացման հետ, ընդլայնվում են Մ-ի իրավասության սահմանները, և VII դ. կեսից Մ., որն արդեն խոշոր հողատեր էր, հիմնականում իր ձեռքում է կենտրոնացրել պետ. իշխանությունը: Առավել նշանավոր էին Պիպինյանների տոհմի Մ-ները, որոնցից Պիպին Կարճահասակը 751-ին գրավեց իշխանությունը և սկիզբ դրեց *Կարոլինգների* դինաստիային:

**ՄԱՅՍԿԻ** Իվան Միխայլովիչ (1884—1975), սովետական դիվանագետ, ՍՍՀՄ արտակարգ և լիազոր դեսպան, պատմաբան: ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս (1946): ՍՄԿԿ անդամ 1921-ից: 1902-ից ընդգրկվել է հեղափոխական շարժման մեջ, 1903-ին հարել է մենշևիկներին (որոնցից հրաժարվել է 1919-ին): 1908-ից տարագրվել է: 1912-ին ավարտել է Մյունխենի համալսարանը: 1917-ի Փետրվարյան հեղափոխությունից հետո վերադարձել է Ռուսաստան: 1922-ից անցել է դիվանագիտական աշխատանքի: 1929—32-ին՝ լիազոր ներկայացուցիչ Ֆինլանդիայում, 1932—43-ին՝ ՍՍՀՄ դեսպան Մեծ Բրիտանիայում: 1943—46-ին՝ ՍՍՀՄ արտգործժողկոմի տեղակալ: Մասնակցել է Ղրիմի (1945), Պոտսդամի (1945) կոնֆերանսներին: 1935—37-ին եղել է ՍՍՀՄ Կենտգործկոմի անդամ, 1941—1947-ին՝ ՍՄԿԿ ԿԿ անդամության թեկնածու: 1946-ից զբաղվել է գիտական և գիտամանկավարժական աշխատանքով:

*Երկ.* Испания. 1808—1917, М., 1957; Воспоминания советского дипломата. 1925—1945, М., 1971.

**ՄԱՅՍՏԵՐԶԻՆԳԵՐ** (< գերմ. Meistersinger, բառացի՝ վարպետ երգիչ), միջնադարյան գերմանական երգային պոեզիայի, այսպես կոչված, մ ա յ ս տ ե ր զ ա ն գ ի ներկայացուցիչը (տես նաև *Միննեզինգեր*): Մայստերզանգի գոյացումը կապված էր քաղաքների վերելքի և բյուրգերականության աճի հետ: Մ-ները, արհեստավորական համքարությունների նման, միավորված էին գրական-երգչական ընկերություններում (դպրոցներում): Առաջին դպրոցը հիմնադրել է մայսենցի Հ. Ֆրաուենլոբը (մոտ 1250—1318): XIV դ. Մ-ի արվեստը լայնորեն տարածված էր Հարավային Գերմանիայում (մասնավորապես՝ Նյուրնբերգում, ուր Մ-ների թիվը հասնում էր 250-ի), ապա՝ Ավստրիայում և Բոհեմիայում: Մ-ները ստեղծագործում էին որոշակի կանոններով (այսպես կոչված՝ տաբուլատուրա): Նրանց երկացանկը ընդգրկում էր բիբլիական կամ կրոնա-դիդակտիկ թեմաներ: Երկտուն (կրկներգով) կառուցվածքի ամեն մի նոր երգի համար վարպետ համարվող երգիչը հորինում էր նոր եղանակ, որն այնուհետև ճանաչվում էր նրա անունով կամ բնութագրվում նաև արհեստով (արծաթագործի, ջուլհակի ևն եղանակներ): Նշանավոր Մ-ներից էին Հանս Սաքսը, Հ. Ֆոգելը, Ա. Փուշմանը: «Նյուրնբերգի մայստերզինգերները» օպերայում (1868) Ռ. Վագները փառաբանել է նրանց արվեստը, միաժամանակ ծաղրել նրանց քաղքենիական պեդանտիզմը: XVI դ. Եվրոպայում, քաղաքային մշակույթի նոր զարգացման հետ, Մ-ների ստեղծագործության մեջ ներթափանցեցին աշխարհիկ, քնարական թեմաներ: XVI դ. վերջից Մ-ների արվեստը անկում ապրեց:

**ՄԱՅՍՈՒՐ**, պատմական մարզ Հարավային Հնդկաստանում: Մինչև XVII դ. Մ-ի տերիտորիան եղել է հնդ. խոշոր պետությունների կազմում:

XIV դ. հիմնադրվել է Վիջայանագարուից կախյալ Մ-ի իշխանապետությունը: XVIII դ. Մ. հանդիսացել է հակագաղութային պայքարի հիմնական օջախը: Անգլո-մայսուրական չորս պատերազմների հետևանքով իշխանապետության տարածությունը փոքրացել է և դարձել անգլ. տիրապետությունից կախյալ: Հնդկաստանի անկախությունից (1947) հետո, մինչև 1973-ը եղել է հնդ. նահանգ, 1973-ից՝ Կառնատակա նահանգ: Գտնվում է Արաբական ծովի ափին: Տարածությունը 192 հզ. *կմ²* է, բն. 31,8 մլն (1975), վարչական կենտրոնը՝ Բենգալուրու: Նահանգի տարածությունը զբաղեցնում է Դեկանի սարահարթի հվ-արմ., Գաթերի՝ նրան հարող և Մալաբարյան ափի հս. մասերը: Կրիշնա և Կավերի գետերն օգտագործվում են ոռոգման համար: Արմ. տերիտորիաներին բնորոշ են տերևաթափ և մշտադալար արևադարձային անտառները, արև-ում՝ սավաննաները:

Տնտեսության հիմքը գյուղատնտեսությունն է: Տարածության կեսից ավելին մշակվում է: Հողագործությունը, բացառությամբ Մալաբարյան ափի, պահանջում է արհեստական ոռոգում: Մշակվող գլխավոր կուլտուրան բրինձն է, աճեցնում են նաև կոկոսյան արմավենի, կորեկազգիներ, ցորեն, ընդեղեն, բամբակենի, գետնընկույզ, ծխախոտ, սուրճ, շաքարեղեգ, թեյ, կաուչուկատուներ, պղպեղ, հիլ և այլ համեմունքներ ու մրգեր: Զբաղվում են անասնապահությամբ, Մալաբարյան ափում՝ ձկնորսությամբ, անտառներում՝ փայտամթերմամբ: Արդյունահանվում են երկաթի և մանգանի հանքաքար, ոսկի, բոքսիտներ, քրոմիտներ: Զարգացած է տեքստիլ արդյունաբերությունը: Զարգանում է մետալուրգիան և մեքենաշինությունը: Կա ապակու, կերամիկական, ճենապակու, ցեմենտի, փայտամշակման, կաշվի, սննդի արդյունաբերություն, սանդալի յուղի, քիմ. պարարտանյութերի արտադրություն: Արդ. հիմնական կենտրոններն են Բենգալուրուն և Մայսուրը:

**ՄԱՅՍՈՒՐՅԱՆ** Նիկոլայ Ալեքսանդրի (11.11.1896, Թիֆլիս — 22.11.1967, Թբիլիսի), հայ սովետական բուսաբույծ: Կենսաբանական գիտ. դ-ր (1944), պրոֆեսոր (1934), ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ (1945), Վ. Ի. Լենինի անվ. ՀամԳԳԱ ակադեմիկոս (1958): ՍՄԿԿ անդամ 1953-ից: Ավարտել է Թիֆլիսի պոլիտեխնիկական ինստ-ի գյուղատնտ. ֆակուլտետը (1922): 1927-ից աշխատել է Կ. Ա. Տիմիրյազևի անվ. գյուղատնտ. ակադեմիայում (1958-ից՝ բուսաբուծության ամբիոնի վարիչ):



Ն. Ա. Մայսուրյան

Մ-ի գիտ. աշխատանքները վերաբերում են Անդրկովկասի մշակովի ֆլորային, բերքատվության բարձրացման կենսաբանական հիմունքներին, աշորայի կարգաբանության, գյուղատնտ. բույսերի և մոլախոտերի սերմնաբանության, հատիկա-ընդեղենների ուսումնասիրության խնդիրներին: Մ. ստացել է սոյայի, չումիզայի, գարու, լուպինի մի շարք սորտեր: Պարգևատրվել է Լենինի (2), Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով:

*Երկ.* Избр. соч., М., 1970; Люпин, М., 1974 (соавтор Атабекова А. И.).

**ՄԱՅՍՈՒՐՅԱՆ** (Փ ո ղ ի ն յ ա ն) Օլգա Միքայելի [7(19).3.1871, Թիֆլիս — 3.6.1931, Թիֆլիս], հայ սովետական դերասանուհի: Վրաց. ՍՍՀ վաստ. արտիստուհի (1930): Բեմ է բարձրացել 1895-ին, Թիֆլիսի Փիթոևի ռուս. թատրոնում, ապա

Օ. Մ. Մայսուրյան

անցել Բաքվի հայկ. թատրոն, ուր, արժանանալով Սիրանույշի հավանությանը, ընդմիշտ նվիրվել ազգային բեմին: Հայկ. թատերախմբերի հետ հանդես է եկել Կովկասի, Հյուսիսային Կովկասի, Ռուսաստանի, ինչպես և Արևմտյան Հայաստանի հայաշատ քաղաքներում: Մ-ի հոգևոր հարուստ տվյալներին ու բեմական հրաշալի արտաքինին զուգակցվել է ռուս թատրոնից փոխառած ռեալիստական խաղաոճը և բեմական բարձր կուլտուրան: Մ-ի կերտած բոլոր կերպարներին՝ Օֆելյա, Դեզդեմոնա, Կորդելիա (Շեքսպիրի «Համլետ», «Օթելլո», «Լիր արքա»), Հուդիթ (Գուցկովի «Ուրիել Ակոստա»), Նորա (Իբսենի «Նորա») ևն, բնորոշ է հուզականությունը, անկեղծությունը, արտահայտչակերպերի հղկվածությունը: Մ-ի ստեղծագործության հիմքում սիրո, կնոջ ազատության, մարդկային արժանապատվության թեման էր [Զեյնաբ (Յուժին-Սումբատովի «Դավաճանություն»), Կլավդիա (Նեմիրովիչ-Դանչենկոյի «Կյանքի գինը»), Մոննա Վաննա (Մետերլինկի «Մոննա Վաննա»), Միրա Էֆրոս (Գորդինի «Միրա Էֆրոս»), Եվգինե, Մարգարիտ (Շիրվանզադեի «Եվգինե», «Պատվի համար»), Կրուչինինա (Ա. Օստրովսկու «Անմեղ մեղավորներ»), Մարի Ստյուարտ (Շիլլերի «Մարի Ստյուարտ»), Մագդա (Զուդերմանի «Հայրենական տուն»)]: Խաղացել է 101 դեր, որոնցից շատերը, այդ թվում՝ Լեդի Մակբեթը (Շեքսպիրի «Մակբեթ»), Ամալյան, Լուիզան (Շիլլերի «Ավազակներ», «Սեր և խարդավանք»), Նաստասյա Ֆիլիպովնան («Ապուշը», ըստ Դոստոևսկու), Նաստյան (Գորկու «Հատակում»), Ֆրու Ալվինգը (Իբսենի «Ուրվականներ»), կրելով դերասանուհու ստեղծած կերպարների ազատատենչ գաղափարները, յուրովի լիցք են հաղորդել դարասկզբի հեղափոխական ոգով տրամադրված հանդիսականին: Հավասարապես տիրապետել է հայերենին և ռուսերենին, ասմունքել այդ լեզուներով (երկացանկում՝ Թումանյանի, Իսահակյանի, Նեկրասովի, Պուշկինի, Գորկու, Հայնեի և այլոց երկերը): Իր արվեստի հուզական խորությամբ, վարպետությամբ և գաղափարական հագեցվածությամբ Մ. դարձել է ժամանակի հայ թատրոնի նշանակալի անհատականություն՝ Սիրանույշից և Հ. Աբելյանից հետո: Մ. Թիֆլիսի Հայ պետ. դրամայի (*Թբիլիսիի հայկական դրամատիկական թատրոն*) հիմնադիրներից էր, ուր ստեղծագործել է մինչև կյանքի վերջը:
*Վ. Գրիգորյան*

Օ. Մայսուրյանը Զեյնաբի դերում (Յուժին-Սումբատովի «Դավաճանություն»)

Օ. Մայսուրյանը Նաստասյա Ֆիլիպովնայի դերում («Ապուշը», ըստ Դոստոևսկու)

Օ. Մայսուրյանը Մարիամ իշխանուհու դերում (Շանթի «Հին աստվածներ»)

**ՄԱՅՐ ՑԱՄԱՔ**, երկրակեղևի խոշոր զանգված, որի մակերևույթի մեծ մասը ցամաքի տեսքով դուրս է եկել Համաշխարհային օվկիանոսի մակարդակից, իսկ ծայրամասերը մնացել են օվկիանոսի մեջ: Մ-ին բնորոշ է երկրակեղևի ամբողջական հզորությունը՝ մինչև 35—45 *կմ* և գրանիտային շերտի առկայությունը: Ժամանակակից երկրաբանական դարաշրջանում գոյություն ունի 6 մայր ցամաք. Եվրասիա, Հյուսիսային Ամերիկա, Հարավային Ամերիկա, Աֆրիկա, Ավստրալիա, Անտարկտիդա:

**ՄԱՅՐԱՎԱՆՔ**, միջնադարյան ճարտարապետական հուշարձան ՀՍՍՀ Հրազդանի շրջանի Սոլակ գյուղի մոտ: Հիմնադրել է (VII դ.) Հովհաննես Մայրավանեցին (Մայրագոմեցի): Մ-ի Ս. Աստվածածին եկեղեցին (XI—XII դդ.) մեկ զույգ արմ. մույթերով գմբեթավոր դահլիճ է, խորանի երկու կողմերում ուղղանկյուն հատակագծով երկհարկ ավանդատներով: Տեղական գորշավուն սրբատաշ քարով շինված եկեղեցին համաչափություններով նման է կենտրոնագմբեթ հուշարձաններին (արտաքին չափերն են 7,16 *մ*×8,40 *մ*): Արմ. ճակատը մշակված է եռանկյունաձև զույգ խորշով: Միակ՝ արմ. դուռն ունի կիսասյուներով զարդարված կրկնակի կամարակապ շքամուտք: Գմբեթատակ քառակուսուց անցումը դեպի գլանաձև թմբուկով գմբեթն իրականացված է առագաստների միջոցով:
*Մ. Հասրաթյան*

**ՄԱՅՐԱՏԵՂԱՅԻՆ ԱՄՈՒՍՆՈՒԹՅՈՒՆ**, մայրատեղային բնակություն, մայրիշխանական պայմաններում տարածված ամուսնական բնակության ձև, որի դեպքում ամուսինը փոխադրվում է բնակվելու կնոջ համայնքում: Մ. ա. ամուսնական զույգի համատեղ բնակության առաջին ձևն է: Մ. ա. հանգեցրել է տոհմային համայնքի վերափոխմանը մոր գծով ընտանեկան համայնքի և նպաստել տղամարդու սեփականության առաջացմանը, որը Մ. ա-ից *հայրատեղային ամուսնության* անցնելու համար կարևոր գործոն էր (տես նաև *Մայրիշխանություն*):

**ՄԱՅՐԱՔԱՂԱՔ**, 1. պետության գլխավոր քաղաքը, վարչաքաղաքական, հաճախ նաև երկրի տնտեսական կենտրոնը: Սովորաբար պետ. իշխանության և կառավարման բարձրագույն մարմինները գտնվում են Մ-ում: Որպես կանոն, Մ. ինքնուրույն վարչական կենտրոն է՝ կառավարման հատուկ ռեժիմով: Հնում հայերը Մ-ի համար օգտագործել են քաղաքամայր, նախագահ-քաղաք անվանումները: Հասարակական-քաղաքական անբարենպաստ պայմանների պատճառով Հայաստանը ունեցել է բազմաթիվ Մ-ներ (Արմավիր, Արտաշատ, Տիգրանակերտ, Վաղարշապատ, Դվին, Կարս, Անի ևն), որի համար էլ անվանվել է «թափառող մայրաքաղաքներով տերություն» (Է. Ռենկյու): ՀՍՍՀ Մ. Երևանն է (1920-ից): 2. Եպիսկոպոսապետի, մետրոպոլիտի, առաջնորդի, վանահոր նստավայր:

**ՄԱՅՐԻ** (Cedrus), սոճազգիների ընտանիքի *մշտադալար փշատերև ծառերի* ցեղ: Բարձրությունը 25—50 *մ* է, պսակը՝ ցրըված, բրգաձև կամ հովանոցաձև: Ասեղնատերևները 3—4 կողանի են, կոշտ, ծակող, մուգ կանաչից մինչև արծաթամոխրագույն, հավասարաչափ ծածկված հերձանցքներով: Կարճացած ընձյուղների վրա ասեղնատերևները փնջաձև են, երկար ընձյուղների վրա՝ մեկական, պարուրաձև դասավորված: Միատուն են, ծաղկում են աշնանը: Կոները մեկական են, տակառաձև կամ երկարավուն ձվաձև: Հայտնի է Մ-ու 4 տեսակ՝ տարածված Միջերկրածովյան երկրներում և Հիմալայներում: ՍՍՀՄ-ում՝ Ղրիմում, Անդրկովկասում, Միջին Ասիայում որպես դեկորատիվ բույսեր մշակվում են ատլասյան Մ. և հիմալայան Մ.: Վերջինս աճեցվում է նաև ՀՍՍՀ Գուգարքի, Ստեփանավանի, Իջևանի և Նոյեմբերյանի շրջաններում: Հին Հայաստանում հարգի է եղել փյունիկյան Մ.: Նրանից պատրաստել են ռազմակառքեր, նիզակակոթեր, ընտիր զարդատուփեր: Ըստ ավանդության Մ-ից է պատրաստվել Նոյի տապանը:
*Ա. Գրիգորյան*

**ՄԱՅՐԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆ**, մատրիարխատ (լատ. mater— մայր և հուն. ἀρχή— իշխանություն, սկիզբ), տոհմական կար-

գերի քայքայման և դասակարգային հասարակության անցման ժամանակաշրջանի հասարակական կառուցվածքի ձևերից մեկը: Հնագիտորեն ընդգրկում է վերին հին քարի դարից մինչև զարգացած նոր քարի դար ընկած ժամանակահատվածը: Մ-յան հիմնական հատկանիշներն են. կնոջ գերիշխող դերը համայնքում, մայրատեղային ամուսնությունը, գույքի և պաշտոնների՝ մոր գծով ժառանգումը, կոլեկտիվ արտադրությունն ու սպառումը, կնոջ և տղամարդու իրավահավասարությունը, գաղափարախոսության մեջ՝ *տոտեմիզմը*: Մ-յան առաջին փուլում (վերին պալեոլիթ և վաղ նեոլիթ) համայնքի անդամներն զբաղվել են որսորդությամբ, ձկնորսությամբ, հավաքչությամբ, որոշ շրջաններում զուգահեռաբար՝ բրիչային պարզունակ երկրագործությամբ: Ամուսնական հարաբերությունների *խմբամուսնության* ձևը աստիճանաբար փոխարինվել է *զուգամուսնությամբ*: Երկու ձևին էլ այդ շրջանում բնորոշ էր ամուսինների տարատեղ (իրենց տոհմերում) բնակությունը: Մայրաձյուղային երկու տոհմերի միջև արտամուսնությունը հետզհետե հանգեցրել է նրանց համախմբմանը և ի վերջո՝ ցեղերի առաջացմանը: Արենակցական կապերը հաշվվում էին մոր գծով: Հիմնական տնտ. կոլեկտիվը մայրական տոհմական համայնքն էր:

Զարգացման երկրորդ շրջանին բնորոշ էր արորային երկրագործության առաջացումը, ընտանի անասունների բազմացումը, արդյունավետ ձկնորսությունը, որոշ վայրերում՝ ծովային որսը: Տիրապետող է դառնում զուգամուսնությունը, ամուսինը բնակություն է հաստատում կնոջ տոհմում: Աստիճանաբար ձևավորվում է մայրատեղային և մոր գծով ընտանեկան համայնքը: Տղամարդիկ պարտավորություններով և իրավունքներով կնոջ և մոր տոհմերի միջև հետզհետե գրավում են միջանկյալ դիրք, որը հանգեցնում է նրանց՝ սկզբում անձնական, ապա՝ մասնավոր սեփականության կուտակմանը, որն իր հերթին նպաստում է Մ-յան քայքայմանն ու *հայրիշխանության* հաստատմանը:

Մ-յանը հատուկ է պատմական անհամաչափ զարգացումը: XV—XVI դդ. աշխարհի հետամնաց շատ ցեղեր ու ժողովուրդներ (ավստրալացիներ, հրոերկրացիներ, բուշմեններ ևն) դեռևս կանգնած էին Մ-յան զանազան աստիճանների վրա: Եվրոպական գաղութատիրությունը նպաստեց դրանց մայրիշխանական համայնքների քայքայմանը և հայրիշխանական ընտանեկան համայնքների ձևավորմանը: Մ-յան վերապրուկները երբեմն դրսևորվում են նաև XX դ. (Սումատրայի մինանգկաբաու ցեղի, Միկրոնեզիայի որոշ ժողովուրդների մոտ ևն):

Մ-յան դարաշրջանն առաջինն ուսումնասիրել է Ի. *Բախոֆենը*, այնուհետև՝ Ջ. Ֆ. Մակ-Լեննանը, Լ. *Մորգանը*, հետագայում իրենց աշխատություններում մշակել են Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը, Վ. Ի. Լենինը:

**ՄԱՅՐԿ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Սղերդի գավառի Բարվարի գավառակում: 1909-ին ուներ 25 տուն հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է աքսորի ճանապարհին:

**ՄԱՅՐՈՆԻՍ** (իսկական անուն-ազգանունը՝ Յոնաս Մ ա չ յ ու լ ի ս, 1862—1932), լիտվացի բանաստեղծ: 1892-ին ավարտել է Պետերբուրգի հոգևոր ակադեմիան: Եղել է այդ ակադեմիայի պրոֆեսոր, այնուհետև՝ Կաունասի հոգևոր սեմինարիայի ռեկտորը: «Գարնանային ձայներ» (1895) քնարական բանաստեղծությունների ժողովածուում արտացոլել է ժողովրդի ազգային-ազատագրական ակնկալությունները, երգել Լիտվայի բնությունը, իդեալականացրել պատմական անցյալը: Երգիծական գործերում ծաղրել է բուրժ. աստիճանավորներին: Գրել է բալլադներ («Չիչինսկաս», 1919), պոեմներ («Մեր ցավերը», 1920), չափածո դրամաներ («Վիտովտ արքան», 1930):

**ՄԱՅՐՑԱՄԱՔԱՅԻՆ ԾԱՆԾԱՂՈՒՏ**, մայր ցամաքի ստորջրյա այն հարթությունը, որը հարում է ափին և երկրաբանական կառուցվածքով նրա հետ բնութագրվում է ընդհանուր հատկանիշներով: Մ. ծ. շարունակվում է ափից մինչև զառիթափը՝ 100—200 *մ*, երբեմն էլ՝ 500—1500 *մ* խորությունը: Մ. ծ-ի ընդհանուր տարածությունը կազմում է 32 մլն. *կմ²*: Բերինգի ծովի ափերում, Եվրասիայում, Հուդզոնի ծովածոցում, Հարավ-Չինական ծովի, Ավստրալիայի հս. ափերում նրա լայնությունը հասնում է 1500 *կմ*: Մ. ծ. ծովային նստվածքների (գլաքարերի, ավազների, ավազային տիղմերի) ինտենսիվ կուտակման մարզ է, բնորոշվում է օրգանիզմների ու հանքանյութերի առատությամբ: Նրա սահմաններում հայտնաբերվել են նավթի և գազի խոշոր հանքավայրեր (Հյուսիսային ծով, Մեքսիկական, Պարսկական ծոցեր): Այդ տարածություններում կատարվում է ձկնորսության և ծովային այլ կենդանիների որսի 92%:

Ըստ ի ր ա վ ա կ ա ն ռ ե ժ ի մ ի (առաջին անգամ սահմանվել է 1958-ի Ժնևյան կոնվենցիայով), Մ. ծ. տերիտորիալ ջրերից դուրս ստորջրյա շրջանների մակերևույթն ու ընդերքն է, որը հարում է ափին (այդ թվում՝ կղզիներին) մինչև 200 *մ* խորությունը կամ այդ սահմաններից դուրս մինչև այն սահմանը, որտեղ ծածկող ջրերի խորությունը հնարավորություն է տալիս մշակելու հիշյալ շրջանների բնական հարստությունները: Մ. ծ. պետ. տերիտորիա չէ, սակայն այդ հատվածի բնական հարստությունները հետախուզելու և շահագործելու սուվերեն իրավունքը պատկանում է առափնյա պետությանը: Մ. ծ-ի իրավական ռեժիմով բնական հարստություններ են համարվում ծովի հատակի մակերևույթի ու ընդերքի հանքային և այլ ոչ-կենդանի պաշարներ, ինչպես նաև նստակյաց օրգանիզմներ, որոնք կամ ամրացված են ծովի հատակին ու ջրում, կամ կարող են տեղաշարժվել ծովի հատակով: Մ. ծ-ի ջրերը, նրանց վրա գտնվող օդային տարածությունները ազատ են բոլոր պետությունների համար: Եթե Մ. ծ-ին հարում է մեկից ավելի պետության տերիտորիա, յուրաքանչյուրի Մ. ծ. սահմանազատվում է պետությունների փոխադարձ համաձայնությամբ: Այդպիսի համաձայնագրեր ՍՍՀՄ-ը կնքել է Ֆինլանդիայի, Թուրքիայի, Լեհաստանի հետ: Մ. ծ-ի նկատմամբ ՍՍՀՄ իրավունքներն ամրագրված են ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության 1968-ի փետր. 8-ի «ՍՍՀՄ մայրցամաքային ծանծաղուտի մասին» հրամանագրով, իսկ աշխատանքներ կատարելու կարգը, նրա բնական հարստությունների պահպանման հարցերը կարգավորվում են ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1969-ի հուլիսի 17-ի որոշմամբ:

*Ա. Եսայան*

**ՄԱՅՐՑԱՄԱՔԱՅԻՆ ԿՂԶԻՆԵՐ**, մայր ցամաքից անջատված և ջրով շրջապատված մասեր՝ երկրաբանական կառուցվածքով ու ռելիեֆով նման մայր ցամաքին: Մ. կ. են Գրենլանդիան, Մադագասկարը, Նոր Գվինեան, Նոր Երկիրը, Մեծ Բրիտանիան:

**ՄԱՅՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՄԱՆԿՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՈՒԹՅՈՒՆ**, ՍՍՀՄ-ում պետական ու հասարակական կանխարգելիչ և բուժիչ միջոցառումների համակարգ, որով ապահովվում է պտղի նախածննդյան պահպանությունը, երեխայի հիվանդությունների կանխարգելումը, նրա ֆիզիկական ու մտավոր զարգացումը, կանանց հիվանդությունների կանխարգելումը, բուժումը և առողջության ամրապնդումը: 1917-ին սոցիալական ապահովության ժողկոմատի կազմում ստեղծվել է Մ. և մ. պ-յան բաժին, որը 1938-ին միացել է առժողկոմատի՝ երեխաների և դեռահասների առողջության պահպանության բաժնին: Կազմակերպվել են նաև կանանց ու մանկական կոնսուլտացիաներ, մանկամսուրներ, մոր և մանկան տներ: Աշխատանքային օրենսգրքով և մի շարք օրենքներով հղիներին ու կերակրող մայրերին տրվել են արտոնություններ: ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության հատուկ հրամանագրով (1944) նյութական և իրավական հիմք է ստեղծվել Մ. և մ. պ-յան հետագա զարգացման համար: Սովետական օրենսդրությամբ արգելվում է հղիներին, կրծքով կերակրող մայրերին և մինչև մեկ տարեկան երեխաներ ունեցող կանանց նշանակել գիշերային, արտաժամյա և առողջության համար վնասակար աշխատանքի, ուղարկել գործուղման (առանց նրանց համաձայնության), ազատել աշխատանքից (բացառությամբ հիմնարկության լրիվ լուծարքի դեպքերի): Անհրաժեշտության դեպքում նրանց պետք է տեղափոխել ավելի թեթև աշխատանքի, պահպանելով միջին աշխատավարձը: Արգելվում է կանանց աշխատանքի չընդունել կամ իջեցնել աշխատավարձը հղիության, երեխային կերակրելու պատճառաբանությամբ: Կրծքով կերակրող մայրերին և մինչև 1 տարեկան երեխա ունեցող կանանց, երեխային կերակրելու համար, տրվում է լրացուցիչ ընդմիջում: Աշխատող կանանց, անկախ աշխատանքային ստաժի տևողությունից, տրվում է հղիության և ծննդաբերության արձակուրդ, միաժամանակ վճարվում նպաստ: Նախատեսված է նաև որոշակի պայմաններում նպաստի վճարում (երեխայի ծնվելու դեպքում) միայնակ և բազմազավակ մայրերին, իսկ 1974-ի նոյեմբ. 1-ից՝ կարիքավոր ընտանիքների երեխա-

ներին: ՍՍՀՄ-ում բազմազավակ մայրերը պարգևատրվում են «Մայրական փառք» շքանշանով և «Մայրության մեդալ»-ով կամ արժանանում «Հերոսուհի մայր» պատվավոր կոչմանը: Ապահովված է հղիության ընթացքում բուժաշխատողների հսկողության տակ գտնվելու և ծննդաբերությունը ստացիոնարում անցկացնելու հնարավորությունը: Զարգացել են բուժօգնության հատուկ տեսակներ (անհասության կանխարգելում և բուժում, ձվարանային ցիկլի խանգարումներ ևն, մանկական գինեկոլոգիա, օնկոգինեկոլոգիա): Գյուղական վայրերում գործում են արտագնաց կանանց կոնսուլտացիաներ: Մեծ նշանակություն ունեն արդ. ձեռնարկություններում աշխատող կանանց կանխարգելիչ քննությունները: Ստեղծված են հատուկ ստացիոնարներ սիրտ-անոթային և կենտրոնական նյարդային համակարգերի, վարակիչ հիվանդություններով, տուբերկուլոզով, երիկամային ախտաբանությամբ տառապող հղիների համար: Արհմիության համակարգում հղիների համար գործում են հատուկ առողջարաններ և հանգստյան տներ: Մանկական պոլիկլինիկաների ցանցն ապահովում է մինչև 14 տարեկան երեխաների բժշկ. հսկողությունը և կանխարգելիչ միջոցառումների կատարումը: Խիստ նվազել է մանկական մահացությունը: ՍՍՀՄ-ում գործում է մանկաբուժության, մանկաբարձության և գինեկոլոգիայի Մ. և մ. պ-յան 22 ԳՀԻ: ՀՍՍՀ-ում գործում են *մանկաբարձության և գինեկոլոգիայի ինստիտուտ*, ծննդատներ, կանանց և մանկական կոնսուլտացիաներ: Սոցիալիստական բոլոր երկրներում ստեղծվել է մանկամսուրների և մանկական այլ հիմնարկների ցանց: Կապիտալիստական մի շարք երկրներում հղիների, ծննդկանների, վաղ մանկական հասակի երեխաների օգնության կազմակերպման և մանկական մահացության դեմ պայքարի միջոցառումներն իրականացվում են տեղական իշխանությունների, բարեգործական ընկերությունների, ինչպես նաև ապահովագրական այլ միջոցների հաշվին:

Գրկ. Копелянская С. Е., Права матери и ребенка в СССР, 3 изд., М., 1960; Маркарян П. А., Акушерско-гинекологическая помощь населению Армении за 40 лет Советской власти, Е., 1960; Мананникова Н. В., Охрана здоровья детей в СССР, М., 1973.

*Դ. Մարգարյան*

**ՄԱՅՐՈՒԹՅՈՒՆ**, տվյալ մորից երեխայի սերված լինելը. հաստատվում է ծննդատան կամ բժշկական այլ հիմնարկության համապատասխան փաստաթղթի հիման վրա, քաղաքացիական կացության ակտերի գրանցման (զագսի) մատյաններում երեխայի ծննդի գրանցմամբ: Բժշկ. հիմնարկից դուրս Մ. կարող են հաստատել բժիշկը կամ վկաները: Երեխայի և նրա մոր միջև անձնական, գույքային փոխհարաբերությունները ծագում են անկախ այն բանից՝ երեխան սերված է ամուսնության մեջ գտնվող մորից, թե՝ ոչ: Ամուսնության մեջ չգտնվող մորից երեխայի սերումը հաստատվում է զագսին ուղղված մոր դիմումի հիման վրա: Վեճի դեպքում Մ. դատական կարգով կարող է վիճարկվել մեկ տարվա ընթացքում, սկսած այն պահից, երբ վիճարկողը կատարված գրանցման մասին իմացել կամ պարտավոր էր իմանալ: Մ. առաջացնում է երեխայի ծննդյան, խնամքի և դաստիարակության հետ կապված իրավունքներ ու պարտականություններ (տես *Մայրության և մանկության պահպանություն*, *Ընտանեկան իրավունքներ և պարտականություններ*):

*Գ. Ղարախանյան*

**ՄԱՅՔԵՀ** (Maiquez) Իսիդորո (1768—1820), իսպանացի դերասան: 1791-ից ելույթ է ունեցել Մադրիդում: 1799—1801-ին Փարիզում աշակերտել է Ֆ. Ժ. Տալմային: 1801-ից ղեկավարել է «Կանիոս դել Պերալ», 1805—18-ին՝ «Պրինսիպե» (ընդհատումներով) թատրոնների թատերախմբերը: Խաղացել է Լոպե դե Վեգայի «Լավագույն ալկալդը թագավորն է», Ալֆիերիի «Բրուտոս Ավագը», Ֆերնանդես դե Մորատինի «Նոր կոմեդիա կամ Սրճարան», «Ծերունին և աղջիկը», Կալդերոնի «Կյանքը երազ է», Շեքսպիրի «Օթելլո» և այլ պիեսներում: Մ. եղել է ազգային դերասանական դպրոցի ռեֆորմատորը. նրա արվեստը նախապատրաստել է իսպանական թատրոնի վերելքը ռոմանտիզմի դարաշրջանում և XIX դ. 2-րդ կեսին:

**ՄԱՅՔԵԼՍՈՆ** (Michelson) Ալբերտ Աբրահամ (1852—1931), ամերիկացի ֆիզիկոս: 1892—1929-ին Չիկագոյի համալսարանի պրոֆեսոր, 1923—27-ին ԱՄՆ-ի ազգային ԳԱ պրեզիդենտ: 1878—82-ին և 1924—26-ին լույսի արագության որոշման բազմաթիվ փորձեր է կատարել՝ Երկրի շարժման հաշվառումով (տես *Մայքելսոնի փորձ*): Ստեղծել է մի ինտերֆերոմետր (Մայքելսոնի ինտերֆերոմետր), որի օգնությամբ 1892—1893-ին հետազոտել է սպեկտրային գծերի գերնուրբ կառուցվածքը: Իբրև երկարության էտալոն առաջարկել է կադմիումի կարմիր գծի ալիքի երկարությունը: Կառուցել է գերբարձր լուծունակության սպեկտրային սարք (Մայքելսոնի էշելոն), աստղային ինտերֆերոմետր և զբաղվել աստղերի անկյունային տրամագծերի որոշմամբ: Արժանացել է Նոբելյան մրցանակի (1907):

Գրկ. Джефф Б., Майкельсон и скорость света, пер. с англ., М., 1963.

**ՄԱՅՔԵԼՍՈՆԻ ԻՆՏԵՐՖԵՐՈՄԵՏՐ** (Ա. *Մայքելսոնի* անունով), տես *Ինտերֆերոմետր*:

**ՄԱՅՔԵԼՍՈՆԻ ՓՈՐՁ**, լույսի արագության վրա Երկրի շարժման ազդեցությունը չափելու նպատակով 1881-ին Ա. *Մայքելսոնի* կատարած փորձը: Մ. փ-ի բացասական արդյունքը *հարաբերականության հատուկ տեսության* հիմքում ընկած փորձնական կարևոր փաստերից էր: XIX դ. վերջին ֆիզիկայում ընդունված էր այն տեսակետը, թե լույսը տարածվում է ինչ-որ հատուկ միջավայրում՝ *եթերում*: Անշարժ եթերի վարկածի համաձայն, լույսի արագությունը Երկրի նկատմամբ պետք է կախված լինի եթերում Երկրի շարժման ուղղության նկատմամբ լուսային ճառագայթի ունեցած ուղղությունից: Փորձը կատարվել է Մայքելսոնի հավասարաբազուկ *ինտերֆերոմետրով*, որի բազուկներից մեկն ուղղվում էր Երկրի շարժման ուղղությամբ, իսկ մյուսը՝ դրան ուղղահայաց: Ամբողջ սարքը 90°-ով շրջելիս՝ ճառագայթների ընթացքների տարբերությունը պետք է փոխի նշանը, որի հետևանքով և պետք է շեղվի ինտերֆերենցիոն պատկերը: Հաշվարկը ցույց է տվել, որ այդ շեղումը՝ $\Delta = (2l/\lambda)(v^2/c^2)$, որտեղ $l$-ը ինտերֆերոմետրի բազուկի երկարությունն է, $\lambda$-ն՝ կիրառված լույսի ալիքի երկարությունը, $c$-ն՝ լույսի արագությունը եթերում, $v$-ն՝ Երկրի ուղեծրային արագությունը: Քանի որ Երկրի ուղեծրային շարժման դեպքում $v/c$ մեծությունը $10^{-4}$ կարգի է, ապա սպասվող շեղումը շատ փոքր է և այդ փորձում կազմում էր ընդամենը 0,04: Այսուհանդերձ, Մայքելսոնի այդ փորձը բավական էր համոզվելու համար, որ անշարժ եթերի վարկածը ճիշտ չէ: 1885—87-ին Մայքելսոնը Է. Ու. Մոռլիի հետ նոր փորձեր է կատարել սնդիկի մեջ լողացող զանգվածեղ սալի վրա տեղադրված ինտերֆերոմետրով: Չափումները դարձյալ հաստատել են Մ. փ-ի բացասական արդյունքը: Հետագայում Մ. փ. բազմիցս կրկնվել է: 1958-ին Կոլումբիայի համալսարանում (ԱՄՆ) մեկ անգամ ևս ցույց է տրվել անշարժ եթերի բացակայությունը: Դասական ֆիզիկան ի վիճակի չէր բացատրելու Մ. փ-ի բացասական արդյունքը և այն համաձայնեցնելու շարժվող միջավայրերի էլեկտրադինամիկայի այլ երևույթների հետ: Մինչդեռ հարաբերականության տեսության մեջ լույսի արագության հաստատուն լինելը հաշվարկման բոլոր իներցիալ համակարգերում ընդունվում է իբրև բազմաթիվ փորձերով հաստատված պոստուլատ:

Գրկ. Вавилов С. И., Экспериментальные основания теории относительности, Собр. соч., т. 4, М., 1956.

**ՄԱՆ** (Mann) Թոմաս (6.6.1875, Լյուբեկ — 12.8.1955, Ցյուրիխ), գերմանացի գրող: Հ. *Մանի* եղբայրը: Գրական ճանաչում է գտել «Բուդենբրոկներ» (հ. 1—2, 1901) վեպով, որը Լյուբեկի պատրիկյան տոհմի չորս սերնդի ճակատագրի պատմությունն է: Մ-ի լավագույն գործերից են նովելները («Տրիստան», 1903, «Տոնիո Կրեգեր», 1903 ևն), որոնցում հոգեբանական խորությամբ պատկերված են արվեստի մարդկանց փոխհարաբերությունները բուրժ. գործարար աշխարհի հետ: 1924-ին Մ. հրատարակել է «Կախարդական լեռը» վեպը, որը ներկայացնում է բուրժ. հասարակության գաղափարական կյանքը առաջին համաշխարհային պատերազմի նախօրեին: Այս երկը շարունակում է գերմ. դաստիարակչական վեպի ավանդույթները և XX դ. փիլ. կարևորագույն վեպերից մեկն է: 1929-ին Մ. արժանացել է Նոբելյան մրցանակի:

1920-ական թթ. 2-րդ կեսին Մ. հանդես է գալիս որպես հրապարակախոս և քննադատ: Հաղթահարելով «Ապոլիտիկ մարդու խորհրդածություններ» (1918) գրքում արտահայտված պահպանողական հայացքները՝ Մ. պայքարել է հիտլերիզմի աճող վտանգի դեմ: Հակաֆաշիստական գաղափարներով են հագեցած Մ-ի «Մարիոն և կախարդը» (1930) նովելը, «Հովսեփը և նրա եղբայրները» (1933—43) բիբլիական թեմայով պատմական քա-


Թ. Մանն


Հ. Մանն

ռերգությունը: 1933-ին, նացիստների՝ իշխանության գլուխ անցնելուց հետո, Մ. տարագրվել է Շվեյցարիա, 1938-ին՝ ԱՄՆ: Գերմ. դասական գրականության մարդասիրական պատգամները, հակադրված ֆաշիստական բարբարոսությանը, հաստատվում են Յո. Վ. Գյոթեի մասին գրված «Լոտտան Վայմարում» (1939) վեպում: 1943-ին Մ. սկսել է աշխատել «Դոկտոր Ֆաուստուս» (1947) վեպի վրա, որը նրա վերջին շրջանի ամենանշանակալից գործն է: Մ. կյանքի վերջին տարիներին ապրել է Շվեյցարիայում, Ցյուրիխում: 1955-ի հունիսին ամբողջ աշխարհում նշվեց նրա 80-ամյա հոբելյանը:

*Երկ.* Gesammelte Werke (in Einzelausgaben), Bd 1—14, B.—W., 1922—37.

*Գրկ.* Томас Манн. Библиографический указатель, М., 1956.

**ՄԱՆ** (Mann) Հայնրիխ (27.3.1871, Լյուբեկ —12.3.1950, Սանտա-Մոնիկա, Կալիֆոռնիա), գերմանացի գրող, հասարակական գործիչ: Թ. *Մանի* եղբայրը: Սովորել է Բեռլինի համալսարանում: Վայմարյան հանրապետության ժամանակ եղել է Պրուսիայի Արվեստների ակադեմիայի գրականության բաժանմունքի անդամ (1926-ից), ապա՝ նախագահը: 1933-ին տարագրվել է Ֆրանսիա: 1936-ից եղել է Փարիզում ստեղծված գերմ. ժողովրդական ճակատի կոմիտեի նախագահը: 1940-ից ապրել է ԱՄՆ-ում: ԳԴՀ-ի կազմավորումից հետո, 1949-ին, հեռակա կարգով ընտրվել է Գերմանիայի Արվեստների ակադեմիայի պրեզիդենտ (առաջինը): 1900-ին լույս է ընծայել «Ավետյաց երկիր» երգիծական, քննադատական վեպը, 1903-ին՝ դեկադենտիզմի ազդեցությամբ գրված «Աստվածուհիներ» եռերգությունը, 1905-ին՝ «Վարժապետ Ունրատը» վեպը, որտեղ մերկացրել է պրուս. խստավարժությունը: Առաջին համաշխարհային պատերազմը (1914—18) սկսվելուց մեկ ամիս առաջ Մ. ավարտել է «Կայսրություն» եռերգության առաջին գիրքը՝ «Հպատակը» (1914, հրտ. 1918) վեպը, որտեղ տրրված է կայզերական կայսրության բարքերի խորապես ռեալիստական, միաժամանակ սիմվոլիկ-գրոտեսկային պատկերը: Եռերգության հաջորդ վեպերն են «Չքավորներ»-ը (1917) և «Գլուխը» (1925):

Մ. հրապարակախոսական և գրաքննադատական գործունեությունն սկսել է XX դ. 10-ական թթ. սկզբներին: 20—30-ական թթ. նա աստիճանաբար հանգել է սոցիալիզմի պատմական դերի ըմբռնմանը, նորովի գիտակցել պրոլետարիատի դերը («Գերմանական բանվորների ուղին», հոդված): Հիտլերիզմի դեմ են ուղղված «Ատելություն» (1933), «Կզա օրը» (1936), «Արիություն» (1939) հոդվածների ժողովածուները: Մ-ի ուշ շրջանի գեղարվեստական ստեղծագործության բարձրակետն է «Հենրիխ IV-ի պատանեկությունը» (1935) և «Հենրիխ IV-ի հասունությունը» (1938) երկերգությունը: «Լիդիցե» (1943), «Շնչառություն» (1949) և այլ վեպեր հատկանշված են սոցիալական քննադատության մեծ սրությամբ և գրական մաներայի խիստ բարդությամբ: Մ-ի հրապարակախոսական գործունեության ամփոփումն է «Դարի տեսություն» (1946) ժողովածուն, որտեղ նա տվել է դարաշրջանի քննադատական գնահատականը:

*Երկ.* Gesammelte Werke, Bd 1—4, 6, 7, 10—12, 14—15, B.—Weimar, 1965—72.

**ՄԱՆԱ** (ուրարտ. սեպագրերում՝ KUR Mana, KUR Manani, աքքադ.՝ Mât Manna, Mât Munna, Mât Manaš, ելամ՝. Har-Minija, հին պարսկ.՝ Ar-Mina, Ar-Minija, ասոր.՝ Ar-Menī, եբր.՝ Minnī), վաղ ստրկատիրական պետական կազմավորում մ. թ. ա. IX—VI դդ. Հայկական լեռնաշխարհում՝ Կապուտան (Ուրմիա) լճի ընդարձակ ավազանում: Ընդգրկել է Մեծ Հայքի *Նոր Շիրական* (Պարսկահայք) նահանգի տարածքը և հարակից շրջանները: Հս-արմ-ից սահմանակից էր *Ուրարտու* պետությանը, հվ. և հվ-արլ. սահմանները հասնում էին Զաղատու գետի հովիտները և Փոքր Զավի ակունքների շրջանը: Կազմվել է մի շարք «ազգազավառներից» (Անդիա, Զիգերտու, Ուիշդիշ, Սուրիկաշ, Մեսսի են): Ուսումնասիրողների (Ռ. Դայսոն, Ե. Պորադ, Է. Գրանտովսկի) կարծիքով մանացիները ցեղակից են եղել Հայկական լեռնաշխարհի մյուս բնիկներին և էապես զատորոշվել իրենց արլ. և հվ. դրացիներից՝ մարական, պարսկ. և սեմական ցեղերից: Մ-ի հասարակական-տնտեսական զարգացման մակարդակը համեմատելի է ուրարտականին: Մ-ում հիմնվել էր ժառանգաբար իշխող արքայատուն: Երկրի կառավարման գործում զգալի դեր էր խաղում նաև տոհմական ավագանին: Մ-ում բարձր զարգացման էին հասել երկրագործությունը, անասնապահությունը, մետաղամշակությունը, արհեստագործությունը: Արհեստագործական արտադրությունները զգալիորեն կենտրոնացվել էին Մ-ի մի շարք խոշոր քաղաքներում (Իզիրտու, Զիբիա, Արմաիդ, Պանզիշ ևն): Մ-ից հայտնաբերված արհեստագործական առարկաները (օրինակ, «Սակկզի գանձ») վկայում են ոչ միայն դրանց բարձր մակարդակի, այլև Մ-ի և Ուրարտուի (մ. թ. ա. VII դարից՝ նաև սկյութական ցեղերի) փոխազդեցության մասին: Ըստ ասորեստանյան արձանագրությունների, Մ-ում կար դպրություն (հավանաբար ստեղծված ուրարտ. և ասորեստանյան սեպագրության հիման վրա): Գտածո որոշ առարկաների վրա պահպանվել են նաև մեհենադրոշմ (հիերոգլիֆ) գրեր: Սակայն ցարդ արձանագրություններ չեն հայտնաբերվել Մ-ի արքաների անունով:

Մ-ի մասին տեղեկություններ են հայտնում մ. թ. ա. IX—VII դդ. ասորեստանյան և ուրարտ. արձանագրությունները: Առաջին տեղեկությունները հաղորդում է Ասորեստանի Սալմանասար III թագավորը՝ դեպի այդ երկիրն արշավելու (մ. թ. ա. 843 և 829 կամ 828) կապակցությամբ: Այդ ժամանակ Մ. արդեն կայուն թագավորություն էր՝ Իզիրտու (Զիրտու) մայրաքաղաքով, որի Ուդակի (Ուալկի) թագավորը պաշտպանում էր իր երկիրն ասորեստանյան նվաճողներից: Մ. թ. ա. 820-ին Մ. արշավելու մասին հիշատակում է նաև Ասորեստանի Շամշի-Ադադ V թագավորը: Հայկական լեռնաշխարհի արյունակից ցեղերի ու նրանց հողերի միավորման ընթացքը գլխավորող Ուրարտու հզոր թագավորությունը մ. թ. ա. IX դ. վերջին քառորդից հետևողականորեն ձգտում էր միավորել նաև Մ.: Մ. թ. ա. 807 և 806-ին Մենուա թագավորը, Ասորեստանի Ադադներարի III թագավորին դուրս մղելով Մ-ից, հասել է մինչև Դիյալայի գետահովիտը (այժմյան Իրաքի հս. շրջանները): Մ-ի համար Ասորեստանի դեմ համառ կռիվներ են մղել (մ. թ. ա. 781—776, 774) նաև Արգիշտի Ա և Սարդուրի Բ թագավորները: Որոշ ուսումնասիրողների (Ն. Ադոնց, Բ. Պիոտրովսկի) կարծիքով Մինուայի, Արգիշտի Ա-ի և Սարդուրի Բ-ի գահակալման ժամանակ (մ. թ. ա. IX դ. վերջ —VIII դ. առաջին կես) Մ. միավորվել է Ուրարտու պետությանը: Մ. թ. ա. VIII դ. երկրորդ կեսից Մ., օգտագործելով Ասորեստանի և Ուրարտուի հակասությունները, հարելով մե՛րթ մեկին, մե՛րթ մյուսին, հիմնականում պահպանել է իր ինքնուրույնությունն ու ամբողջականությունը: Այսպես, Մ-ի Իրանզու թագավորը, որը սկզբում դաշնակցել է Ուրարտուի Ռուսա Ա թագավորին (մ. թ. ա. մոտ 735—714), մ. թ. ա. 718-ին հարել է Ասորեստանին՝ հարուցելով իր գավառակալ-իշխանների դժգոհությունը: Վերջիններիս ապստամբական ելույթը նա կարողացել է ճնշել միայն Սարգոն II-ի օգնությամբ: Մ. թ. ա. 716-ին Մ-ի Ուիշդիշ, Զիգերտու և Անդիա գավառների իշխանները՝ Ռուսա Ա-ի օգնությամբ, Ուաուշ լեռան մոտ (Ուրմիայից հս-արլ.) տեղի ունեցած ճակատամարտում հաղթել և սպանել են Իրանզուի որդուն և հաջորդին՝ Ազա (Աձա) թագավորին, որը սատարել էր Սարգոն II-ին: Մ-ի թագավոր է հռչակվել Ուիշդիշի Բագադատի իշխանը: Չհանդուրժելով Ուրարտուի օգտին կատարված այդ գահաշրջությունը՝ Սարգոն II ներխուժել է Մ., տապալել Բագադատիին և թագավոր հռչակել Ազայի Ուլուսունու եղբորը: Սակայն վերջինս, հաշվի առնելով Մ-ի ավագանու հակաասորեստանյան տրամադրությունը, մ. թ. ա. 715-ին դաշնակցել է Ռուսա Ա-ին՝ նրան պատանդ տալով իր որդուն, ինչպես նաև Ուրարտուին զիջելով Մ-ի Ուիշդիշ գավառը և ռազմավարական կարևոր նշանակություն ունեցող 22 բերդ: Սարգոն II նույն թվականին վերստին ներխուժել է Մ., գրավել մի շարք քաղաքներ և ընկճել ըմբոստներին: Մ-ի «ավագանու խորհրդի «երաշխավորությամբ Ուլուսունուն հնազանդվել է Սարգոնին՝ նրան տալով հարկ և պատանդներ: Մ. թ. ա. 714-ի ամռանը Սարգոն II, օգտվելով կիմերներից պարտություն կրած Ուրարտուի դժվարին իրավիճակից, մտել

է Մ. և իր «կրտսեր դաշնակից» կոչված Ուլուսունուի օգնությամբ (պարենով, ձիերով) ներխուժել Ուրարտու, ավերել և կողոպտել նրա հվ. 7 գավառը: Մ-ի միավորման համար Ասորեստանի դեմ պայքարը շարունակել է Ռուսայի որդի Արգիշտի Բ թագավորը (մ. թ. ա. 714—մոտ 680): Ատրպատականի Արտավետ (Արդաբիլ) քաղաքից ոչ հեռու, Սավալան լեռան հվ. լանջին պահպանված Արգիշտի Բ-ի արձանագրությունը վկայում է հվ-արլ. շրջաններում նրա ձեռք բերած ազդեցության մասին: Մ. թ. ա. 670-ական թթ. Ասորեստանի դեմ Մ. և Ուրարտուն դաշնակցել են այդ ժամանակ Կուրի և Երասխի միջագետքում հիմնված Ասքանազյան թագավորությանը: Ըստ Ասարխադդոնի արձանագրությունների, մ. թ. ա. 674-ին Մ. Իշկուզայի (Ասքանազյան թագավորության) և Կուտիների (կորտիներ-կորդվացիներ) զինակցությամբ, սպառնում էր ներխուժել Ասորեստան: Մ. թ. ա. 673-ին, երբ հաշտության և փոխօգնության պայմանագիր է կնքվել Ասարխադդոնի և Ասքանազյան Պարտատուա թագավորի (նույնացվում է հուն. աղբյուրների Պրոտոթիասին և հայկ. աղբյուրների Պարույր Սկայորդուն) միջև, Մ-ի Ախշերի թագավորը Ասորեստանի դեմ պայքարում փորձել է դաշնակցել հարևան Մարաստանին: Սակայն Ասորեստանի Աշշուրբանապալ թագավորը հաղթել և տապալել է (մ. թ. ա. 660 կամ 659) Ախշերի թագավորին և Մ-ի գահը հանձնել նրա Ուալլի որդուն: Վերջինս, Աշշուրբանապալին պատանդ տալով իր Երիսինի որդուն և նրա կանանոցը ուղարկելով իր դուստրերից մեկին, դարձել է Ասորեստանի «կրտսեր դաշնակից»: Այդ հարաբերությունները շարունակվել են մինչև մ. թ. ա. VII դ. վերջին քառորդը:

Մեծ հզորության հասած Ասքանազյան թագավորությունը, ի դեմս Պարտատուա-Պրոտոթիասի որդու և հաջորդի՝ Մադիես թագավորի, մ. թ. ա. 625-ին պարտության մատնելով Ասորեստանի Նինվե քաղաքը պաշարած Մարաստանի Կվաքսարես թագավորին, ապա՝ Եգիպտոսի փարավոնին և Փոքր Ասիայում հաստատված կիմերական տրերների ցեղերին, 28 տարի գերիշխանություն է հաստատել Մերձավոր Արևելքում (Հերոդոտոս, գիրք 1, 106): Մ. և Արարատյան (Ուրարտու) թագավորությունը այդ ժամանակ ռազմաքաղաքական սերտ դաշինքի մեջ են եղել Ասքանազյան թագավորության հետ: Այդ է պատճառը, որ հրեաների առաջնորդ Երեմիան (մ. թ. ա. 629—586) Հայկական աշխարհը ներկայացնում է որպես հիշյալ երեք թագավորությունների (Արարատ, Միննի, Աշքենազ) միություն (Աստվածաշունչ, Երեմիա, գլ. LI, 27): Աստվածաշնչի հին հուն. և հայկ. թարգմանություններում (Յոթանասնից) այդ թագավորությունները հիշատակվում են հավաքական անունով՝ «Արարատյան թագավորություններ»: Աստվածաշնչի հին ասոր. թարգմանությունը (Պեշիտտա) Մ. հիշատակում է «Ար-Մենի» անունով, որը համապատասխանում է հին պարսկերեն «Ար-Մինա» կամ «Ար-Մանիյա» և ելամերեն «Խար-Մինայա» անվանաձևերին: Մ. թ. ա. VI դ. ելամացիները, մարերը և պարսիկները իրենց անմիջական դրացի Մ-ի և մանացիների անունը տարածեցին նաև բովանդակ Հայոց աշխարհի ու հայ ժողովրդի վրա, որովհետև Մ. արդեն կազմում էր Հայոց միասնական աշխարհի նահանգներից մեկը, իսկ մանացիները՝ հայ ժողովրդի էթնիկական բաղադրամասը: Աքեմենյանների եռալեզու արձանագրություններում (Բագիստանա, Նաքշ-ի Ռուստամ, Պերսեպոլիս) Հայաստանը հին պարսկ. բնագրում հիշատակվում է «Արմինա» կամ «Արմանիյա», ելամերենում՝ «Խար-Մինայա», իսկ աքքադերենում՝ «Ուրաշտու» անունով: Մարաստանի, ապա Աքեմենյան Պարսկաստանի աշխարհակալության ժամանակ (մ. թ. ա. VI—IV դդ.) Մ. երկրանունից ծագած Հայաստանի «Արմինա» («Ար-Մինա») օտարաշխարհիկ անունը «Արմենիա», «Առմանա», «Առմոնա», «Ռեմանա» և այլ ձևերով տարածվել է աշխարհի բազմաթիվ ժողովուրդների մեջ:

*Գրկ.* Սանտալճյան Հ., Ասորեստանյա և պարսիկ սեպագիր արձանագրությունք..., Վնն., 1901: Ադոնց Ն., Հայաստանի պատմություն, Ե., 1972: Կատվալյան Մ. Ա., Հին Հայաստանի «Արմենիա» անվան ծագման շուրջ, «ԵՀ», 1976, № 1(24): Дьяконов И. М., Ассиро-вавилонские источники по истории Урарту, «Вестник-древней истории», 1951, № 2—3; Նույնի, История Мидии..., М.—Л., 1956; Меликишвили Г. А., Урартские клинообразные надписи, М., 1960; Грантовский Э. А., Раняя история иранских племен Передней Азии, М., 1970.

*Մ. Կատվալյան*

**ՄԱՆԱԳՈՒԱ** (Managua), Նիկարագուայի մայրաքաղաքը (1858-ից), երկրի վարչական, արդյունաբերական և մշակութային կենտրոնը: Գտնվում է Մանագուա լճի ափին, Պանամերիկյան խճուղու վրա: 400 հզ. բն. (1978): Երկաթուղային կայարան է, միջազգային օդանավակայան (Լաս Մերսեդես): Կան տեքստիլ, կաշվի-կոշիկի, սննդի, ցեմենտի, նավթավերամշակման ձեռնարկություններ: Ունի համալսարան, փիլիսոփայության, ազգային, աշխարհագրության, պատմության ակադեմիաներ, ազգային արխիվ և թանգարան: Հիմնադրվել է XVI դ.:

**ՄԱՆԱԶԿԵՐՏ**, Պատնոց (այժմ՝ Բանսան), գետ Հայկական լեռնաշխարհում, Արածանիի ձախ վտակը: Երկարությունը մոտ 73 *կմ* է: Սկսվում է Ծաղկանց լեռների արմ. լանջից, հոսում Մանազկերտի դաշտով և Մանազկերտ քաղաքից հս-արմ. խառնվում Արածանիին: Սնումը խառն է, հորդացումը՝ մայիսին:

**ՄԱՆԱԶԿԵՐՏ**, Մանավազակերտ, քաղաք Մեծ Հայքի Տուրուբերան նահանգի Ապահունիք գավառում, այժմյան նույնանուն գյուղի տեղում, Արածանիի միջին հոսանքում, ձախ ափին: Եղել է Ապահունիք գավառի կենտրոնը, Մանավազյան նախարարների աթոռանիստը: Մ-ի միջով է հոսում Արածանիի ձախակողմյան վտակ Պատնոցը (Մ. գետ): Մ-ի դաշտը պատված է հարթ, մի քանի շերտից բաղկացած սև քարերով:

Մատենագրության մեջ Մ. հիշատակված է որպես գյուղ, գյուղաքաղաք կամ բերդաքաղաք: Հայկ. հնագույն ավանդության համաձայն, Հայկ Նահապետի որդի Մանավազը հիմնադրել է Մ. և անվանել Մանավազակերտ, որը հետագայում կրճատ ձևով կոչվել է Մ.: Ենթադրվում է, որ Մ. հիմնադրել է ուրարտ. Մենուա թագավորը (մ. թ. ա. մոտ 810—778): Այստեղ պահպանվել են Մենուայի սեպագիր մի քանի արձանագրություններ: Մինչև IV դ. Մ-ին տիրել են Մանավազյանները: Այս տոհմի բնաջնջումից (333) հետո Հայոց թագավոր Խոսրով Բ Կոտակը Մ., գավառով հանդերձ, պարգևել է Աղբիանոսյան տոհմին, որը Մ. դարձրել է եպիսկոպոսանիստ: Մ-ում տեղի է ունեցել եկեղեցական երկու ժողով (719-ին՝ Հովհան Օձնեցի կաթողիկոսի գլխավորությամբ, և 726-ին): Բյուզանդական Հովհաննես Սկիլիցես պատմագիրը (XI դ.) հաղորդում է, որ Մ. եղել է ամենաամուր և անառիկ քաղաքն ամբողջ Հայաստանում և ունեցել է սև քարից կառուցած եռաշար, աշտարակավոր ամրակուռ պարիսպներ՝ 5 դարպասներով: XI—XIII դդ. Մ. Շահ ի-Արմենների ամիրայության երկրորդ կենտրոնն էր և իր նշանակությամբ զիջում էր միայն աթոռանիստ Խլաթ քաղաքին: Մ-ում զարգացած են եղել արհեստները, ներքին ու արտաքին առևտուրը: Արածանիի հովտով ու Մ-ի դաշտով անցնող ճանապարհներով այն կապված էր Հայաստանի մի շարք քաղաքների հետ:

968-ին բյուզանդական զորքը գրավել է Մ.: 1000-ին Վասիլ կայսրը այն նվիրել է Արծրունի իշխաններին: 1054-ին Մ-ի վրա են հարձակվել սելջուկները՝ սուլթան Տուղրիլի գլխավորությամբ: Մ-ի կայազորն ու բնակիչները, Վասակ իշխանի ղեկավարությամբ, սելջուկյան զորքին հարկադրել են նահանջել: Հս. Հայաստանն ամբողջապես գրավելով՝ սելջուկյան զորքերը 1071-ի օգոստոսի 10-ին Մ-ում ընդհարվել են բյուզանդական, հայկ. և այլ զորքերի հետ (տես *Մանազկերտի ճակատամարտ 1071*), սելջուկներն ավերել, կողոպտել են Մ., սրի մատնել բնակչությանը, որից հետո քաղաքը շարունակ անկում է ապրել՝ աստիճանաբար վերածվել սովորական գյուղաքաղաքի: 1915-ին Մ. ունեցել է 5000 բնակիչ (մեծ մասամբ՝ հայեր), որոնք հիմնականում զբաղվել են հացահատիկի մշակությամբ, մասամբ՝ առևտրով ու արհեստագործությամբ: Մ. առաջին համաշխարհային պատերազմից հետո վերածվել է անշուք գյուղի:

Մ-ի հին հուշարձանները համեմատաբար լավ են պահպանված: Կիսականգուն վիճակում մեր օրերն են հասել նրա արլ. ծայրամասում գտնվող հնագույն միջնաբերդի պարիսպներն ու աշտարակները և մի քանի այլ կառույցների ավերակներ: Առանձնապես լավ է պահպանվել միջնաբերդի՝ XI դ. կառուցված ամենամեծ աշտարակը: Մ-ում կար 2 եկեղեցի (Ս. Աստվածածին և Ս. Գևորգ), հայկ. մեկ դպրոց: 1915-ի Մեծ եղեռնից հետո Մ-ի հայ բնակչությունը ևս ենթարկվեց կոտորածների ու տեղահանման, և այնտեղ դադարեց հայկ. կյանքը:

*Գրկ.* Թովմա Արծրունի և Անանուն, Պատմություն Արծրունյաց տան, Ե., 1978: Առաքելյան Բ. Ն., Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դդ., [հ.] 1, Ե., 1958: Հակոբյան Թ. Խ., Հա-

յաստանի պատմական աշխարհագրություն, Ե., 1968:

*Թ. Հակոբյան*

**ՄԱՆԱԶԿԵՐՏԻ ԴԱՇՏ**, միջլեռնային գոգհովիտ Հայկական լեռնաշխարհում, Արածանի գետի վերին հոսանքի ավազանում: Հիմնականում համընկնում է Մեծ Հայքի Տուրուբերան նահանգի Դալառ (հս-արմ.), Ապահունիք (հս-արլ.) և Հարք (հվ-արմ.) գավառների տարածքին: Եզերվում է հս-ից՝ Շարիան և Ծաղկանց, հս-արմ-ից՝ Աղդաղ և Խամուր, հվ-արմ-ից՝ Բուլանըխի, հվ-ից՝ Սիփանի լեռնազանգվածներով: Երկարությունը մոտ 125 *կմ* է, լայնությունը՝ մոտ 60 *կմ*, բարձրությունը՝ 1500—1700 *մ*: Թասանման իջվածք է՝ տափարակ հատակով: Ռելիեֆի միօրինակությունը խախտում են Բիլեջան, Բաղնոց, Կորնան (2430 *մ*) հրաբխային սարերը: Կազմված է երրորդական հասակի կրաքարային ու մերգելային հաստույթներից, ետպլիոցենյան լճային նստվածքների հորիզոնական շերտերից և ալյուվիալ բերվածքներից: Կլիման չափավոր ցամաքային է: Հունվարի միջին ջերմաստիճանը —5°C-ից —6°C է, հուլիսինը՝ 18—20°C, տարեկան տեղումները՝ 400—500 *մմ*: Գլխավոր գետը Արածանին է: Բնորոշ է տափաստանային լանդշաֆտը՝ սևահողային, մուգ շագանակագույն և կարբոնատներով հարուստ կմախքային հողերով, տարախոտային բուսածածկույթով: Գետահովիտներում և նախալեռնային ձորակներում հանդիպում են նոսր անտառներ՝ կաղնու, գիհու, սոճու պուրակներով, մասրենու, ազնու, ցաքիի մացառուտներով: Բնակիչները զբաղվում էին հողագործությամբ (հացահատիկ, բանջարեղեն) և անասնապահությամբ:

*Գ. Աբրահամյան*

**ՄԱՆԱԶԿԵՐՏԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏ 1071**, վճռական ընդհարում սելջուկ-թուրքերի և բյուզանդական զորքերի միջև, *Մանազկերտի* մոտ, Տողոտափ վայրում, օգոստոսի 19-ին: Բյուզանդիան XI դ., աստիճանաբար ոչնչացնելով հայկ. պետ. միավորումները (Վասպուրականի Արծրունյաց, Շիրակի ու Վանանդի Բագրատունյաց թագավորությունները), լուծարքի էր ենթարկել հայկ. ռազմ. ուժերը, որով հնարավորություն էր ընձեռել սելջուկ-թուրքական հորդաներին ներխուժելու Հայաստան և Բյուզանդիայի սահմանամերձ երկրամասերը: 1070-ին սելջուկները գրավել են Մանազկերտը: 1071-ի գարնանը Բյուզանդիայի կայսր Ռոմանոս IV ետ է գրավել Մանազկերտը: Այնուհետև սելջուկ-թուրքական բանակը հարձակվել է բյուզանդական զորքի վրա: Ճակատամարտի թեժ պահին բյուզանդական բանակի կազմում եղած վարձկան ուզերն ու պեչենեգներն անցել են իրենց ցեղակից թուրքերի կողմը, բյուզանդացի զինվորները խուճապահար լքել են ճակատը և վերադարձել ճամբար: Շարունակել են քաջաբար մարտնչել բյուզանդական բանակի կազմում գտնվող հայկ. զորամասերը: Սակայն Բյուզանդիայի կայսեր վիրավորվելուց ու գերվելուց հետո ճակատամարտն ավարտվել է սելջուկների հաղթանակով: Կայսեր և սելջուկյան սուլթան *Ալփ-Արսլանի* միջև կնքվել է հաշտություն, որով կայսրությունը սելջուկներին է զիջել Մանազկերտը, Խլաթը, Եդեսիան, Հիերապոլիսը, Անտիոքը, պարտավորվել է վճարել տարեկան հարկ ևն: Մ. ճ. բախտորոշ նշանակություն է ունեցել Բյուզանդիայի համար: Փոքրասիական թերակղզու հարցը այստեղ վճռվել է հօգուտ թուրքերի, որոնք այնուհետև հեշտությամբ տիրացել են թերակղզուն և արդեն նույն դարավերջին դուրս եկել Եգեյան ծով, ստեղծել Ռումի (Իկոնիայի) սուլթանությունը:

*Գրկ.* Արիստակես Լաստիվերցի, Պատմություն, Ե., 1972: Մատթեոս Ուռհայեցի, Ժամանակագրություն, Ե., 1973: Հովհաննես Սկիլիցես, Ե., 1979 (Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին 10, Բյուզանդական աղբյուրներ 3): Բոռնազյան Ս. Վ., Հայաստանը և սելջուկները XI—XII դդ., Ե., 1980: История Византии, т. 2, М., 1967; Cahen C., La Campagne de Mantzikert, d'après les sources musulmanes, «Byzantion», t. IX, fasc. 2, 1934; Streater J., The Battle of Mantzikert, «History Today», vol. 17, № 4, 1967.

*Հ. Բարթիկյան*

**ՄԱՆԱԾԱԳՈՐԾՎԱԾՔ**, ջուլհակահաստոցի վրա փոխուղղահայաց թելերի միահյուսմամբ ստացվող գործվածք: Հաստությունը 0,1—5 *մմ* է, լայնությունը՝ մինչև 1,5 *մ*, երբեմն՝ մինչև 12 *մ*, երկարությունը՝ տարբեր: Ըստ թելի տեսակի Մ-ները լինում են բրդե, բամբակե, մետաքսե, վուշե ևն: Ջուլհակահաստոցներից հանված Մ. կոչվում է կոշտ Մ., որը հետագայում ենթարկվում է վերջնամշակման: Ըստ նշանակման տարբերում են կենցաղային գործվածքներ և *տեխնիկական գործվածք*: Մ-ի կառուցվածքը բնութագրվում է թելերի հաստությամբ, գործվածքի մակերևույթի բնույթով, խտությամբ և միահյուսման ձևով:

**ՄԱՆԱԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ**, հնում՝ ոստայնանկություն, միջին դարերում և ավելի ուշ՝ նաև ջուլհակություն (պարսկ.), թելերից գործվածքներ հյուսելու արհեստը: Առաջացել է դեռևս նեոլիթի դարաշրջանում, լայն տարածում է ստացել նախնադարյան հասարակարգի հետագա փուլերում: Ենթադրվում է, որ Մ. ծագել է ծառի դալար ճյուղերից կողով, զամբյուղ և ճիլ խոտերից խսիր գործելու նմանությամբ: Մ-յան զարգացումը մեծապես կապված էր երկրագործության ու անասնապահության առաջացման և հետագա ընդլայնման հետ: Դրանք մատակարարում էին Մ-յանն անհրաժեշտ հումքը (կանեփի, վուշի, բամբակի թելեր, մազ, բուրդ ևն):

Դեռևս հնագույն ժամանակներում ինչպես հաստ, կոպիտ, նույնպես և բարակ, նուրբ թելերից գործել են տարբեր որակի, երբեմն՝ շատ նուրբ ու գույնզգույն գործվածքներ: Մ. թ. ա. III հազարամյակում Չինաստանում առաջացել է *մետաքսագործությունը*: Բուրդն ավելի գործածական է եղել Արևելքում, Եվրոպայում և Ամերիկայում, կանեփի թելը և վուշը՝ Եգիպտոսում, Արևմտյան և Հարավ-Արևելյան Եվրոպայում, Կովկասում, բամբակը՝ Եգիպտոսում, Հնդկաստանում, Չինաստանում, Միջին Արևելքում: Մ. հայտնի չի եղել պոլինեզացիներին, Հյուսիսային Ամերիկայի բնիկներին (բացի նավախո և պուեբլո ցեղերից), Հարավային Աֆրիկայի ցեղերին և Ծայր հյուսիսի (բացի խանտերից ու մանսիներից) բնիկներին: Դատելով հնագիտական տվյալներից՝ ձեռքի Մ-ական հաստոցն առաջացել է դեռևս մ. թ. ա. V հազարամյակում: Ֆ. Էնգելսը Մ-ական հաստոցի գյուտը, հանքաքարից մետաղ ստանալու և մշակելու հետ միասին, համարել է պատմական զարգացման առաջին աստիճանում մարդու առավել կարևոր նվաճումը: Հաստոցները եղել են երկու տեսակ՝ ուղղահայաց և հորիզոնական:

Միջնադարյան Հայաստանում քաղաքային զարգացած Մ-յան մեջ գործածվել է ուղղահայաց, բավականաչափ բարդ հաստոցը: Ուղղահայաց հաստոցի առէջքաթելերը ամրացվում էին վերին գլանին, իսկ նրանց ներքին ծայրերին կախվում էին կավե կախիկներ: Նման կախիկներ, ինչպես և նուրբ ու խավով հաստ գործվածքների բեկորներ, գտնվել են Կարմիր բլուրում՝ ուրարտ. Թեյշեբաինի քաղաքի միջնաբերդում:

Մ-յան մեջ հետզհետե տարբերակվել են տարբեր ծագում ունեցող թելերից գործվածքներ գործելու արհեստները: Բրդեղեն (ասվի) գործվածքների արտադրությունը կոչվում էր ասվագործություն, վուշի թելից գործվածքներ պատրաստելը՝ կտավագործություն, մետաքսաթելինը՝ մետաքսագործություն: Արտադրվում էին ամեն տեսակի գործվածքներ, սկսած կոպիտ պաստառներից մինչև նրբագույն շղարշները: Հին հայերենում գործվածքը հայտնի է եղել ոստայն, հյուսվածք, անկուած, բանվածք անուններով: Հայ և արաբ հեղինակները մեծ դրվատանքով են խոսում Դվինում և այլ քաղաքներում արտադրվող հայկ. գործվածքների՝ վուշից պատրաստվող բեհեզի, որդան կարմիրով ներկված մետաքսաթել ծիրանիի, կերպասի, բրդից, բամբակից և մետաքսից գործված թավշի, ոսկեթել, ոսկեհուռ, ոսկեգույն և արծաթագույն թելերով հյուսված ծաղկանկար դիպակների մասին, որոնք դարձել էին միջազգային առևտրի բարձրարժեք առարկաներ:

XVI—XVII դդ. Եվրոպայի մի շարք երկրներում (Անգլիա, Ֆրանսիա ևն), XVII—XVIII դդ. Ռուսաստանում, XIX դ. Հայաստանում առաջանում են կապիտալիստական առաջին մանածագործական ձեռնարկությունները, որի հետևանքով տնայնագործական Մ. աստիճանաբար կորցնում է նշանակությունը: Մ. այժմ թեթև արդյունաբերության կարևոր ճյուղերից է:

*Գրկ.* Աբրահամյան Վ. Ա., Արհեստները Հայաստանում IV—XVIII դդ., Ե., 1956: Առաքելյան Բ. Ն., Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դդ., [հ.] 1, Ե., 1958: Цейтлин Е. А., Очерки истории текстильной техники, М.—Л., 1940.

*Բ. Առաքելյան*

**ՄԱՆԱԿԵՐՏ**, Մանկերտ, Մանազկերտ, Մանաճիրի բերդ, Քարն կամ Քառն Մանակերտ, բերդ Մեծ Հայքի Վասպուրական նահանգի Ռշտունիք գավառում, Վանա լճի հարավային ափի հրվանդանի վրա (Աղթամար կղզու դիմաց), ապառաժուտ բարձր ժայռի

գազաթին: Ուսումնասիրողների կարծիքով Մ. իր անունով կառուցել է Ուրարտուի Մենուա թագավորը (մ. թ. ա. 810—786): Մ-ի անունը երբեմն շփոթվել է Մանազկերտի հետ, և ըստ այդմ Ռշտունյաց գավառը հիշատակվել «Գաւառ Մանազկերտոյ» ձևով: Ըստ ավանդական վկայության, Հայոց Հարավային զորաթևի հրամանատար Մանաճիհր Ռշտունի իշխանը, ձերբակալելով քրիստոնեական քարոզիչներ Հակոբ Մծբնացի եպիսկոպոսին ու նրա կողմնակիցներին, նրանց Մ-ի բերդապարսպից նետել է Վանա լիճը: Նահատակների նշխարները Արծրունյաց իշխանները ամփոփել են մոտակա Պարծիս (Պծիծս) գյուղում և այնտեղ հիմնել վանք: Բերդի ստորոտին էր գտնվում Քարադաշտ գյուղը:

Գրկ. Ինճիճյան Ղ., Ստորագրութիւն Հին Հայաստանեայց, Վնտ., 1822: Հովհաննիսյան Մ., Հայաստանի բերդերը, Վնտ., 1970:

**ՄԱՆԱՆԱ**, գազպեն, գազպին, 1. որոշ ծառատեսակների (հացենի, կաղնի ևն) վրա գոյացող քաղցրահամ նյութ: Առատորեն լինում է Մուշի դաշտում, Սասունում: Առաջանում է հվ-ից քամու բերած դեղձենու, ծիրանենու ծաղկեփոշուց, որը նստելով ծառերի վրա, դառնում է մեղրանման զանգված: Բնակիչները Մ. հավաքում են, եփում և օգտագործում մեղրի, շաքարի փոխարեն: Ժողովուրդը Մ. անվանել է նաև «Ս. Կարապետի հալվա»: Տարածված է «Երկնքից Մ. է իջնում» արտահայտությունը՝ իբրև առատության խորհրդանիշ:

2. Ըստ Աստվածաշնչի մի զրույցի՝ սպիտակ մեղրահամ նյութ, որ ամեն առավոտ առատությամբ թափվում էր Սինա անապատում, որով սնվում էին իսրայելցիները:

*Լ. Պետրոսյան*

**«ՄԱՆԱՆԱ»**, երգիծական շաբաթաթերթ: Լույս է տեսել 1913—14-ին, Կ. Պոլսում: Խմբագիր՝ Ե. Օտյան: Գրեթե ամբողջությամբ տպագրել է խմբագրի գործերը («Վաճառականի մը նամակները» երգիծավեպը, «Մեր երեսփոխանները» դիմանկարների շարքը՝ Գ. Զոհրապի, Գ. Տեր-Կարապետյանի, Հ. Ճանկյուլյանի, Հ. Խոճասարյանի և այլոց մասին) և այլ ծավալուն գործեր, ինչպես նաև երգիծական մանր ստեղծագործություններ, որոնցում ծաղրել է կեղծավորությունը, շահամոլությունը, փառամոլությունը: Լրատու բաժնի նյութերը հիմնականում վերաբերում են մշակութային կյանքի նորություններին:

*Գ. Ստեփանյան*

**ՄԱՆԱՆԱՂԻ**, Մանաղի, գավառ Մեծ Հայքի Բարձր Հայք նահանգում, Եփրատի Մանանաղի (այժմ՝ Թուզլու) վտակի ավազանում: Արմ-ից և հս-ից սահմանակից էր Եկեղյաց, *Դերջան* և Կարին գավառներին, արլ-ից և հվ-ից եզերվում էր Բյուրակն—Մնձուրյան լեռնաշղթայի արլ. հատվածով՝ Պախրա (Գայլախազուտ) և Մեղեդուխի լեռներով: Ուշ միջնադարում կոչվել է նաև Լակզո ձոր, ապա՝ Վերին Դերջան: Մակերևույթը, հիմնականում, հարթավայրային է, հողը՝ արգավանդ: Հարուստ է աղի պաշարներով (Թադոս գյուղի մերձակա աղահանքը բավարարում էր նաև Կարինի ու Բասենի բնակչության աղի պահանջը), վայրի ոչխարներով, կարմրախայտ ձկներով: Մ-ում հիշատակվում են Խաչ և Սմբատա լեռները: Հին բնակավայրերից հայտնի են Վժան, Շիրնի և Սմբատաբերդ բերդաքաղաքները, Ջերմ քաղաքագյուղը, Բազմաղբյուր կամ Խաչ ավանը, Կաշե և Աղյուս ագարակները, որոնցից շատերը XI դ. եղել են թոնդրակյան աղանդի կենտրոններ: XIX դ. հայտնի էին Թադոս և Քյուլիս գյուղերը, որոնց բնակչությունը 1828-ի ռուս-թուրքական պատերազմից հետո գաղթեց Արևելյան Հայաստան:

Գրկ. Ինճիճյան Ղ., Ստորագրութիւն Հին Հայաստանեայց, Վնտ., 1822: Հակոբյան Թ. Խ., Հայաստանի պատմական աշխարհագրություն, Ե., 1968: Адонц Н. Армения в эпоху Юстиниана, Е., 1971.

*Թ. Հակոբյան*

Հ. Հ. Մանանդյան

**ՄԱՆԱՆԴՅԱՆ** Հակոբ Համազասպի [10 (22).11.1873, Ախալցխա — 4.2.1952, Երևան], հայ պատմաբան, բանասեր, աղբյուրագետ: Պրոֆեսոր (1925), գիտ. վաստ. գործիչ (1935), պատմական գիտ. դ-ր (1938): ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս (1939), ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1943): Սովորել է Թիֆլիսի առաջին դասական գիմնազիայում (1883—93), Ենայի, Լայպցիգի, Ստրասբուրգի համալսարաններում (1893—97), մասնագիտացել փիլ-յան, արևելագիտության, լեզվաբանության մեջ: 1897-ին Ենայի համալսարանում պաշտպանել է դիսերտացիա և ստացել փիլիսոփայության դոկտորի աստիճան: 1898-ին էքստեռն կարգով ավարտել է Պետերբուրգի համալսարանի արլ. լեզուների ֆակուլտետը և ստացել հայ-պարսկական բանասիրության թեկնածուի առաջին կարգի դիպլոմ, իսկ 1909-ին՝ Յուրևի (Դորպատ) համալսարանի իրավաբանական ֆակուլտետը: Դասավանդել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանում (1900—05), Թիֆլիսի առաջին և երկրորդ արական գիմնազիաներում (1905—07), Ներսիսյան դպրոցում (1906—07), Բաքվի ժողովրդական համալսարանում (1911—13) և առևտրական դպրոցում (1915—19): Աշխատակցել է պարբերական մամուլին («Արարատ», «Արշալույս», «Գործ» ևն): Խմբագրել է «Արմենիշե Ցայտշրիֆտ» («Armenische Zeitschrift», 1901—04), «Արշալույս» (1906), «Բաքու» («Баку», 1917) պարբերականները: Բաքվում զբաղվել է փաստաբանությամբ (1909—19):

Մ. Երևանի համալսարանի հիմնադիր դասախոսներից է, եղել է առաջին ռեկտորը (1921), արևելագիտական, ապա՝ պատմագրական ֆակուլտետների դեկան (1921—23), հայ ժողովրդի պատմության ամբիոնի վարիչ (1921—25), նույն ամբիոնի պրոֆեսոր (1925—31): 1925-ին ընտրվել է Գիտության և արվեստի ինստ-ի անդամ, վարել է նույն ինստ-ի պատմահասարակագիտական բաժնի գիտնական քարտուղարի պաշտոնը, 1930-ին հաստատվել է ՀՍԽՀ Գիտությունների ինստ-ի առաջին կազմում: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով (1945):

1931-ից Մ. ընդհատել է մանկավարժական աշխատանքը և զբաղվել միայն գիտահետազոտական գործունեությամբ: Մ. թողել է հայերեն, ռուս., գերմ. ավելի քան 100 աշխատություն՝ նվիրված հայ ժողովրդի հին և միջնադարյան պատմությանն ու բանասիրությանը, Հայաստանի սոցիալ-տնտեսական հարաբերություններին, քաղաքներին, առևտրին ու քաղաքային կյանքին, Հայաստանի և Անդրկովկասի պատմական աշխարհագրությանը, առևտրական ճանապարհների ու ռազմ. արշավանքների երթուղիների ուսումնասիրությանը, չափագիտությանը, վիմագրությանը ևն: Մ. հայագիտության մեջ մուտք է գործել որպես բանասեր: 1902-ին, Հ. Աճառյանի աշխատակցությամբ, 2 հատորով հրատարակել է XII—XIX դդ. հայկ. վկայաբանական գրականության հայտնի բոլոր բնագրերը (մեկ տարի անց լույս տեսավ նույնի քննաբաղդատական գիտական հրատարակությունը): Մ. զբաղվել է հուն. իմաստասիրական երկերի հայերեն թարգմանությունների, հայոց մատենագիտության, *հունաբան դպրոցի* գործունեության, վերջինիս լեզվի, առանձին երկերի, հատկապես՝ Դավիթ Անհաղթի իմաստասիրական ժառանգության ուսումնասիրությամբ: Այս բնագավառում կատարած նրա աշխատանքների հանրագումարն էր «Հունաբան դպրոցը և նրա զարգացման շրջանները» (Վիեննա, 1928) ընդհանրացնող մենագրությունը, որտեղ Մ. պարզել է հունաբան դպրոցի առաջացման պատճառներն ու զարգացման շրջանները, հունարենից կատարված թարգմանական իմաստասիրական ու քերականական գրականության ժամանակագրությունը, ցույց է տվել հունաբան դպրոցի դերը հայոց աշխարհիկ բանաստեղծության, հայոց լեզվի ձևաբանության, շարահյուսության և բառապաշարի զարգացման գործում: Մ. հետագայում ևս, տարբեր առիթներով, դարձյալ անդրադարձել է հունաբան դպրոցի առանձին երկերի ուսումնասիրությանը՝ հրատարակելով Թեոն Ալեքսանդրացու և Հերմես Եռամեծի իմաստասիրական երկերի հայերեն թարգմանությունների բնագրերը: Մ. զբաղվել է նաև Մովսես Խորենացու Պատմության գրության ժամանակի խնդրով («Խորենացու առեղծվածի լուծումը», 1934): Տուրք տալով հայագիտության մեջ արտահայտված այն սխալ տեսակետին (Լա Կրոզ, Գուտշմիդ, Կարիեր, Խալաթյանց, Մառ ևն), ըստ որի, «Աշխարհացոյց»-ը պատկանում է Խորենացու գրչին՝ Մ. նույնպես փորձել է ապացուցել, թե իբր Մովսես Խորենացու Պատմությունը և «Աշխարհացոյց»-ը գրված են IX դ. միևնույն անձնավորության ձեռքով: Այդուհանդերձ, Մ. խիստ բարձր է գնահատել Խորենացու երկի նշանակությունը

Հին Հայաստանի պատմության ամենատարբեր հարցերի ուսումնասիրության բնագավառում: «Մեսրոպ Մաշտոցը և հայ ժողովրդի պայքարը մշակութային ինքնուրույնության համար» (1941, ռուս.) աշխատության մեջ Մ. բացահայտել է հայ գրերի պատմության հետ կապված մի շարք առեղծվածներ և հանգել այն եզրակացության, որ մաշտոցյան գրերը ստեղծվել են 392—393-ի ընթացքում: Մեծ արժեք են ներկայացնում Մ-ի աշխատությունները [«Արմավիրի հունարեն արձանագրությունները նոր լուսաբանությամբ» (1946), «Գառնիի հունարեն արձանագրությունը և Գառնիի հեթանոսական տաճարի կառուցման ժամանակը» (1946)]՝ նվիրված Հայաստանում հայտնաբերված հուն. վիմագիր արձանագրությունների վերծանմանն ու ուսումնասիրությանը:

Մ. սովետահայ պատմական գիտության հիմնադիրներից է: Նրա առաջին հետազոտություններն այս բնագավառում նվիրված էին շինականների դրության, արքունի հարկերի, հողատիրության ձևերի, առևտրի և քաղաքների ուսումնասիրությանը: «Հայաստանի առևտրի և քաղաքների մասին» (1930, ռուս.) մենագրության մեջ գիտականորեն ուսումնասիրել է Հայաստանի քաղաքների պատմությունը, խաղացած դերը համաշխարհային առևտրի մեջ, նրանց առաջացման, զարգացման ու անկման հարցերը: Հայաստանի սոցիալ-տնտեսական հարաբերություններին նվիրված ուսումնասիրություններում հայթայթված տվյալները հիմք հանդիսացան Մ-ի «Ֆեոդալիզմը Հին Հայաստանում» (1934) մենագրության համար, ուր լուսաբանված են Հայաստանում ֆեոդալիզմի ծագման, զարգացման, կազմալուծման ու անկման խնդիրները, վերլուծված են հողատիրության ինստ-ները, ավատական աստիճանակարգությունը, նախարարությունների ներքին կառուցվածքը, շինականների իրավական ու տնտ. դրությունը ևն: Մ. այստեղ, ինչպես նաև այլ աշխատություններում, փորձել է ապացուցել, թե Հայաստանը ստրկատիրական հասարակական-տնտեսական ֆորմացիա չի ապրել, տոհմատիրական կարգերի քայքայումից անմիջապես հետո տիրապետել են ֆեոդալական հարաբերությունները: «Տիգրան Բ և Հռոմը» (1940) գործում փաստական և աղբյուրագիտական հարուստ նյութերի հիման վրա Մ. առաջին անգամ վեր է հանել Տիգրան Բ-ի ժամանակաշրջանի գիտական-քննական պատմությունը: Վերագնահատելով Տիգրան Բ-ին և նրա ժամանակաշրջանին նվիրված բոլոր սկզբնաղբյուրներն ու առկա գրականությունը՝ Մ. ժխտեց բուրժ. պատմագրության (Մոմզեն, Ռեյնաք, Ֆեռերո) այն տեսակետը, որի համաձայն, Տիգրան Բ Մեծի պայքարը Հռոմեական Հանրապետության դեմ ոչ այլ ինչ էր, եթե ոչ «բարբարոս Արևելքի» պայքարը «քաղաքակիրթ Արևմուտքի» դեմ: Մ. ցույց տվեց այս տեսակետների հակագիտական ու միտումնավոր բնույթը, բացահայտեց Հռոմի զավթողական քաղաքականությունը Հայաստանի նկատմամբ, համոզիչ փաստերով ապացուցեց Տիգրան Բ-ի մասին հռոմ. սկզբնաղբյուրներում պահպանված վկայությունների զունազարդված, միակողմանի բնույթը: Մ. վեր հանեց նաև հռոմ. նվաճողների դեմ հայ ժողովրդի մղած պայքարի մինչ այդ չլուսաբանված դրվագները: 1940-ական թվականներից Մ. ձեռնարկեց «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության» բազմահատոր աշխատությունը, ուր քննաբար լուսաբանվելու էր հայ ժողովրդի՝ մ. թ. ա. VI դ.— մ. թ. XVI դ. ամբողջական պատմությունը: Աշխատության 1-ին հատորը (1945) ընդգրկում է հայ ժողովրդի ծագումից մինչև Արշակունյաց հարստության հաստատումը (66), 2-րդ հատորի 1-ին մասը (1957) նվիրված է Արշակունյաց հարստության ժամանակաշրջանին (66—428), իսկ 2-րդ մասը, որն ընդգրկելու էր մարզպանության, Արաբական խալիֆայության և Բագրատունյաց հարստության պատմաշրջանները, մնացել է անավարտ: 3-րդ հ. (1952) նվիրված է սելջուկյան, Զաքարյանների իշխանապետության, մոնղ. ու թուրքմենական ցեղերի տիրապետության ժամանակաշրջաններին: Այս աշխատությամբ Մ. փորձել է ընդհանրացնել և հանրագումարի բերել նաև իր նախորդ աշխատություններում շոշափած խնդիրները: Ուշադրությունն առավելապես կենտրոնացնելով Հայաստանի քաղ. պատմության թերի կամ բոլորովին չլուսաբանված հարցերի ու ժամանակաշրջանների վրա՝ նա մասնակիորեն է անդրադարձել երկրի սոցիալ-տնտեսական հարաբերություններին, օտար տիրապետությունների դեմ հայ ժողովրդի ազատագրական, ինչպես նաև դասակարգային ու ներդասակարգային պայքարի ու մշակույթի պատմության հարցերին: Մ-ի սույն աշխատությունը կարևոր դեր խաղաց Հայաստանի հին և միջնադարյան քննական պատմությունն ստեղծելու գործում: Դա առաջին փորձն էր պատմության մատերիալիստական ըմբռնման դիրքերից լուսաբանելու, գիտական ամուր հիմքերի վրա դնելու նշված ժամանակաշրջանների պատմության ուսումնասիրությունը: Մ-ի աշխատություններից շատերը գիտական կարևոր ավանդ են ոչ միայն Հայաստանի, այլև Անդրկովկասի ու Մերձավոր Արևելքի երկրների պատմության ուսումնասիրման ու լուսաբանման գործում:

*Երկ.* Яков Амазаспович Манандян, Е., 1959 (Материалы к библиографии ученых СССР). Երկ., հ. 1—3, Ե., 1977—78:

*Գրկ.* Բաբայան Լ. Հ., Հակոբյան Վ. Ա., Հակոբ Մանանդյան, Ե., 1974:

*Պ. Հովհաննիսյան*

**ՄԱՆԱՆԵԽ**, կաղամբազգիների (խաչածաղկավորների) ընտանիքի Brassica ցեղի միամյա, ձիթատու, մեղրատու բույսեր: ՍՍՀՄ-ում մշակվում է հիմնականում 2 տեսակ՝ կապտամոխրագույն Մ. (B. juncea) և սպիտակ Մ. (Sinapis alba): Կապտամոխրագույն Մ-ի ցողունը հիմնականում մերկ է, ներքևի տերևները խոշոր են, քնարանման, ամբողջական կամ խիստ կտրտված, իսկ վերինները՝ մանր, նշտարաձև, ամբողջական: Պտուղը պատիճ է՝ 16—20 սերմով: 1000 սերմի կշիռը 2,0—2,5 *գ* է: Պարունակում է 35—47% բուսական և 0,5—1,7% եթերային յուղ: Սպիտակ Մ-ի ցողունը ծածկված է կոպիտ մազմզուկներով, ներքևի տերևներն ունեն երկար, իսկ վերինները՝ կարճ կոթուն: Պատիճը գլանաձև է՝ 4—7 սերմով: 1000 սերմի կշիռը 4,7 *գ* է: Պարունակում է 30—40% բուսական յուղ: ՍՍՀՄ-ում Մ. մշակվում է Վոլգոգրադի, Սարատովի, Ռոստովի մարզերում, Մարիական և Ուդմուրտական ԻՍՍՀ-ներում: Տարածված են կապտամոխրագույն Մ-ի ժոլտոսեմեննայա և սպիտակ Մ-ի ՎՆԻԻՄԿ-162 սորտերը: Սերմի բերքատվությունը 12—15 *ց/հա* է (առավելագույնը՝ 25—27 *ց/հա*), կանաչ զանգվածինը՝ 200—250 *ց/հա*: Բերքը հավաքում են լրիվ հասունացման շրջանում, վերասարքավորված կոմբայնով: Մ-ի բուսական յուղը օգտագործվում է հացաթխման, հրուշակեղենի արդյունաբերության, իսկ եթերային յուղը՝ մանանեխային սպիրտի ձևով, բժշկության մեջ: Մ-ի քուսպի փոշուց պատրաստում են ծեփուկ և սեղանի Մ:

*Ա. Մաթևոսյան*

**ՄԱՆԱՍ**, հայ նկարիչների ընտանիք: Ապրել ու ստեղծագործել են Կ. Պոլսում, XVII դ. վերջից մինչև 1920-ական թթ.: Եղել են սուլթանների պալատական նկարիչներ, վարել նաև դիվանագիտական պաշտոններ: Մ-ները թուրք. արվեստում առաջիններն են, որ ստեղծել են դիմանկարներ, երփնագրել կտավի վրա, սկզբնավորել հաստոցային նկարչությունը: Նրանց դիմանկարները կրել են եվրոպական դասական դիմանկարչության ուժեղ ազդեցությունը՝ զուգորդված տեղական գեղագիտական ըմբռնումներին: Բնորոշվում են ոչ միայն վավերականությամբ, այլև դեկորատիվ տարրերի նրբագեղ վերարտադրումով, միջավայրի ու տարածության զգացողությամբ: Նշանակալից է Մ-ների ընտանիքի դերը հայ նոր կերպարվեստի ձևավորման շրջանում: Ավագը՝ Բարսեղը (XVII դ. վերջ — XVIII դ. սկիզբ), եղել է Ահմեդ Գ-ի պալատական նկարիչը: Կատարել է մանրանկարչական դիմանկարներ: Որդին՝ Ռաֆայելը (XVIII դ. 1-ին կես), գեղարվեստական կրթություն է ստացել Իտալիայում, հայտնի է եղել որպես խոշոր գեղանկարիչ և ճարտարապետ: Հայտնի են նրա «Երկու երիտասարդ», «Արտեմիս», «Աստղիկ աստվածուհին» նկարները: Սրբանկարներ է կատարել Կ. Պոլսի հայկ. եկեղեցիների համար: Պալատական գեղանկարիչներ էին նաև որդիները՝ Մանասը և Զենոբը (XVIII դ. 2-րդ կես): Ռաֆայելի Մ-ի թոռը՝ Զենոբը (XVIII դ. վերջ—XIX դ. սկիզբ), նաև դիվանագետ էր ու թարգմա-



Ռուբեն Մանաս. «Ֆաթիմայի դիմանկարը» (XIX դ., Թոփ Գաբու պալատի թանգարան, Ստամբուլ)

նիչ: Վերջինիս որդիները ստեղծագործել են XIX դ.: Ա լ ե ք ս ա ն դ ր ը 1893-ին ավարտել է Վիեննայի Գեղարվեստի ակադեմիան: Գ ա ս պ ա ր ը 32 տարի Թուրքիայի դեսպանատան առաջին քարտուղարն էր Վիեննայում, Մ ա ք ս ու դ ը գեղարվեստական կրթություն է ստացել Իտալիայում, Ռ ու բ ե ն ը Փարիզում Թուրքիայի դեսպանատան քարտուղարն էր, իսկ 1869-ից հյուպատոս՝ Միլանում: Նա մանրանկար-դիմանկարների հեղինակ է («Ֆաթիմայի դիմանկարը»): Թոռը՝ Ս ե պ ու հ ը (1816—1889), 1858-ին դեսպանատան 1-ին քարտուղար էր Շվեդիայում, ապա՝ 30 տարի Փարիզում: Նրա նկարներից հայտնի են Աբդուլ Ազիզ և Աբդուլ Մեջիդ սուլթանների դիմանկարները, որոնք ունեն «Մանաս» և «Սեպուհ Մանաս» ստորագրությունները: Տոհմի շնորհալի նկարիչներից էր նաև Ժ ո զ ե ֆ Մ կ ր տ ի չ Մ. (1835—1916), որը նույնպես վարել է դիվանագիտական պաշտոններ: Նրա գործերից են Վիկտորիա թագուհու և Դեյլի Ֆուատ փաշայի դիմանկարները: Մ-ների ստեղծագործությունները պահպանվում են Կ. Պոլսի թանգարաններում:

*Գրկ.* Ս տ ե փ ա ն յ ա ն Գ., Նկարիչ Մանասները, «Տեղեկագիր ՀՍՍՀ ԳԱ», 1963, № 12: Ղ ա զ ա ր յ ա ն Մ., Հայ կերպարվեստը XVII—XVIII դարերում, Ե., 1974: S a k i s i a n A., Les Manasses une dynastie des peintres aux XVIII^e et XIX^e siècles, «Pages d'Art Arménien», 1940, p. 97—101.

*Մ. Ղազարյան*

**ՄԱՆԱՍ** Էդգար (12.4.1875, Կ. Պոլիս — 1964, Կ. Պոլիս), հայ կոմպոզիտոր: Երաժշտական կրթությունը ստացել է Պադուայում (Իտալիա): 1905-ին Կ. Պոլսում ստանձնել է «Gallia» երգչախմբի ղեկավարությունը, տվել համերգներ՝ արժանանալով ֆրանս. կառավարության «Officier d'academie» տիտղոսին: Ղեկավարել է «Քնար», «Արվեստասեր» միությունների երգչախմբերը, նվագախմբերը: 1923-ից դասավանդել է Կ. Պոլսի կոնսերվատորիայում (աշակերտներից են Արա Պարթևյանը, Գոհարիկ Ղազարոսյանը): Ստեղծագործել սկսել է պատանեկությունից: Լավագույն գործերից են՝ լարային կվարտետը, դաշնամուրային «Իշխանաց կղզիները», «Փոքրիկ սյուիտը», պրելյուդներն ու ֆուգաները, նվագախմբային՝ «Արևելյան ռապսոդիա», «Սիմֆոնիկ պատկեր» երկերը. հեղինակել է նաև երգեր ու խմբերգեր: Մասնավորապես արժեքավոր է ու առավել ազգային բազմաձայն Պատարագը (1910—12, վերջին խմբ. 1948-ին, առաջին կատարումը՝ 1961, Կ. Պոլիս):


Է. Մանաս

*Ց. Բրուտյան*

**«ՄԱՆԱՍ»**, կիրգիզ ժողովրդի էպոսը: Ունի կես միլիոնից ավելի չափածո տող: Առաջինը 1856-ին գրառել է (մի հատված) ղազախ ազգագրագետ Չ. Վալիխանովը, իսկ 1862-ին և 1869-ին՝ ռուս գիտնական ակադեմիկոս Վ. Ռադլովը (առանձին դրվագներ): «Մ.» ամբողջությամբ գրառվել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո: Կիրգ. ՍՍՀ ԳԱ ֆոնդերում հավաքված է 18 տարբերակ: Էպոսի ստեղծման ժամանակի հարցում դեռևս միասնական կարծիք չկա: Հիմնական բովանդակությունը Մանասի քաջագործություններն են:

**ՄԱՆԱՍԵՐՅԱՆ** Նորայր Մարգարի [ծն. 28.12.1927, գ. Աղջաղշլաղ (այժմ՝ Գետազատ, ՀՍՍՀ Արտաշատի շրջանում)], հայ սովետական տնտեսագետ: Տնտեսագիտական գիտ. դ-ր (1971): ՍՄԿԿ անդամ 1967-ից: 1953-ին ավարտել է Մոսկվայի համալսարանի տնտեսագիտության ֆակուլտետը: 1956-ից՝ ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտական ինստ-ի գիտաշխատող, 1973-ից՝ ագրարային պրոբլեմների բաժնի վարիչ: Գիտական աշխատությունները վերաբերում են հողային հարաբերությունների և գյուղատնտեսության վերարտադրության պրոբլեմներին:

*Երկ.* Աշխօրից • դեպի դրամական վարձատրություն, Ե., 1960: Գյուղատնտեսության ինտենսիվացման տնտեսական նշանակությունը, Ե., 1967: Հողի գնահատման տնտեսական պրոբլեմները Հայկական ՍՍՀ-ում, Ե., 1979 (հեղինակակից՝ Լ. Ի. Աղամյան): Дифференциальная рента и рентабельность колхозов, Е., 1967.

**ՄԱՆԱՍԻ ԴԱՄԲԱՐԱՆ**, XIV դարի ճարտարապետական հուշարձան Կիրգիզիայում (Տալաս գետի վերին հոսանքի կողմերում): Կառուցվել է որպես Աբուկ Էմիրի աղջկա՝ Կյանիզյակ խաթունի դամբարան, սակայն, ըստ լեգենդի Մանաս դյուցազնի դամբարանն է: Մ. դ. Միջին Ասիայում տարածում գտած աղյուսաշեն, գմբեթավոր դամբարանի տիպարն է: Հատակագծում ուղղանկյուն է, գմբեթի վրանաձև կողավոր ծածկով (վերականգնվել է 1969—1970-ին): Գլխավոր ճակատը շքամուտքի տեսքով է, ներս ընկած սլաքաձև խորշով՝ երեսապատված նրբագեղ զարդանախշերով և արձանագրություններով փորագրված թրծակավե սալիկներով:

*Գրկ.* П о м а с к и н Б. В., Гумбез Манаса, Фрунзе, 1972.


Մանասի դամբարանը (1334) վերականգնումից հետո

**ՄԱՆԱՍՅԱՆ** Ալեքսանդր Հովհաննեսի (ծն. 20.11.1910, Երևան), հայ սովետական անասնաբույժ: Անասնաբուժական գիտ. դ-ր (1954), պրոֆեսոր (1955), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1967): ՍՄԿԿ անդամ 1942-ից: Ավարտել է Երևանի անասնաբուժական-անասնաբուծական ինստ-ը (1935): 1946-ից նույն ինստ-ի ծննդագիտության, գինեկոլոգիայի և արհեստական սերմնավորման ամբիոնի վարիչն է: Գիտական աշխատանքները վերաբերում են տարբեր կենդանիների հղիության, դրա վրա ազդող ներօրգանիզմային գործոնների, անպտղության հիմնական պատճառների (մետրիտ, ձվարանների կիստա, կայուն դեղին մարմին ևն), սպերմայի մանրէային աղտոտվածության, կաթնագեղձի հիվանդությունների, գաղտնի ընթացող մաստիտների և այլ հարցերի ուսումնասիրություններին: Առաջարկել է գինեկոլոգիական տարբեր հիվանդությունների բուժման մեթոդներ (ռեֆլեկտոր, ֆիզիոթերապևտիկ, էլեկտրափորեզ ևն) և միջոցներ (բազմանյութ խծուծ, պոլիմերոլ ևն): Պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով:

*Երկ.* Մաստիտների պրոֆիլակտիկան և բուժումը, Ե., 1959: Անասնաբուժական գինեկոլոգիայի հիմունքները, Ե., 1966:

**ՄԱՆԱՍՅԱՆ** Իսահակ Մարկոսի [ծն. 1917, գ. Խերխան (այժմ՝ ԼՂԻՄ Մարտունու շրջանում)], Սովետական Միության հերոս (7.4.1940): ՍՄԿԿ անդամ 1939-ից: Ավարտել է Գորկու Մ. Վ. Ֆրունզեի անվ. ռազմաքաղաքական ուսումնարանը (1942), Թբիլիսիի «Վիստրել» դասընթացները (1944): Որպես գնդացրային դասակի, ապա վաշտի հրամանատար, 1939—40-ին մասնակցել է Արևմտյան Բելոռուսիայի, Արևմտյան Ուկրաինայի ազատագրմանը, սովետա-ֆիննական պատերազմին: Հերոսի կոչմանն արժանացել է սովետա-ֆիննական ռազմաճակատում իր վաշտով Կիրկ բարձունքը գրավելու և պահելու համար: Հայրենական մեծ պատերազմի ժամանակ ծառայել է թիկունքում: Զորացրվելուց (1947) հետո աշխատանքի է անցել Բաքվում:

**ՄԱՆԱՍՅԱՆ** Սամվել Մեսրոպի (1.1.1907, գ. Կեմ, Վանի նահանգ —20.4.1979, Երևան), հայ սովետական քանդակագործ: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1967): ՍՄԿԿ անդամ 1940-ից: Սովորել է Լենինգրադի գեղարվեստա-տեխնիկական բարձրագույն ինստ-ում (1929—33): 1941—1944-ին մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: Ստեղծագործել է հիմնականում մոնումենտալ քանդակագործության բնագավառում, կերտել Գ. Աթարբեկյանի (բազալտ, 1961, Արարատի շրջանի Նորաշեն գյուղ), Վ. Ի. Լենինի (բազալտ, 1966, Երևան) և հեղափոխական այլ գործիչների հուշարձաններ: Գործերից են նաև «Մայր հայրենիք» (բազալտ, 1945), «Գարուն» (կավ, 1971) քանդակները, բանվոր Ս. Մանուկյանի (բրոնզ, 1952), Յա. Սվերդլովի (բազալտ, 1960) դիմաքանդակները (երկուսն էլ՝ Հայաստանի պետ. պատկերասրահ): Մ. 1918-ի Սարդարապատի ճակատամարտին նվիրված մոնումենտալ հուշահամալիրի հեղինակներից է:

**ՄԱՆԱՎԱԶՅԱՆՆԵՐ**, Մ ա ն ա վ ա զ ե ա ն ք, նախարարական տոհմ Արշակունյաց Հայաստանում: Մ-ի ժառանգական կալվածքն էր Հարք գավառը՝ Մա-

նավազակերտ (հետագայում՝ Մանազկերտ) կենտրոնով: Ըստ ավանդության, Մ. կոչվել են Հայկ Նահապետի որդի Մանավազ նախնու անունով: 330-ական թթ. Մ. անհաշտ կռիվներ են մղել իրենց ազգակից իշխանական տոհմերի՝ Բզնունիների ու Որդունիների դեմ: Չկարողանալով հաշտեցնել կռվող կողմերին՝ Խոսրով Բ Կոտակ թագավորի հրամանով սպարապետ Վաչե Մամիկոնյանը ոչնչացրել է նրանց և բռնագրավել տիրույթները: Հարք գավառը տրվել է Աղբիանոսյանների եպիսկոպոսական տոհմին:

*Ռ. Մաթևոսյան*

**ՄԱՆԱՐՅԱՆ** Արման Քրիստափորի (ծն. 15.12.1929, Թեհրան), հայ սովետական կինոռեժիսոր: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1975): 1946-ին ներգաղթել է Սովետական Հայաստան: 1954-ին ավարտել է Երևանի Կոմիտասի անվ. կոնսերվատորիան: 1962-ին ավարտել է Համամիութենական կինոինստ-ը (Մոսկվա): Նույն



Կադր «Կարինե» կինոնկարից (1967), ռեժ. Ա. Մանարյան

թվականից աշխատում է «Հայֆիլմ» կինոստուդիայում: Նկարահանել է «Տժվժիկ» (1961, ըստ Ատրպետի), «Կարինե» (1967, ըստ Տ. Չուխաճյանի «Լեբլեբիջի» օպերետի), «Մորգանի խնամին» (1969, ըստ Շիրվանզադեի, Երևանի հեռուստատեսություն), «Հեղնար աղբյուր» (1970, ըստ Մ. Արմենի), «Վերադարձ» (1972), «Սպիտակ ափ» (1975), «Եվս հինգ օր» (1979) գեղարվեստական ֆիլմերը, ինչպես և «Բյուրականի աստղադիտարանը» (1965) վավերագրական ժապավենը:

*Է. Մանուկյան*

**ՄԱՆԳԱԼԻՑԱՅԱՆ ԽՈԶԵՐԻ ՑԵՂ**, մանգալից, ճարպատու խոզերի ցեղ: Ստացվել է Բալկանյան թերակղզում, տեղական և ասիական խոզերի տրամախաչումից: Ռուսաստան ներմուծվել է Հունգարիայից և Ռումինիայից: Ցեղի խոզերը խոշոր չեն և ունեն ամուր մարմնակազմվածք: Հասակավոր վարազների կենդանի զանգվածը՝ 160—180, իսկ մերուններինը՝ 120—150 *կգ* է: Պտղատվությունը՝ 6—8 խոճկոր: Սեռահասուն են դառնում 11—13 ամսականում: Դիմացկուն են, խտացրած կերերի սահմանափակ քանակով կարող են բտվել, լավ են օգտագործում արոտը: Տարածված է Ռումինիայում, Հունգարիայում (լավագույն մանգալիցը հունգարականն է), Հարավսլավիայում, Չեխոսլովակիայում, ոչ մեծ գլխաքանակով՝ նաև Արևմտյան Ուկրաինայում և Անդրկովկասում: ՀՍՍՀ ներմուծվել է 1948-ին: Օգտագործվել է անտառալեռնային շրջանների տեղական խոզերի բարելավման համար (Շամշադինի շրջանում տեղական խոզերի տրամախաչումից ստացվել է խոզերի նոր խումբ): Ներկայումս բոլոր երկրներում մանգալիցի գլխաքանակը պակասել է և փոխարինվել բարձր մթերատու ցեղերով:

*Գ. Տողանյան*

**ՄԱՆԳԱՆ** (Manganum) (< հուն. μαγγανεύω — խաբում եմ), Mn, տարրերի պարբերական համակարգի IV պարբերության, VII խմբի քիմիական տարր, կարգահամարը՝ 25, ատոմական զանգվածը՝ 54, 9380: d տարր է, ատոմի արտաքին թաղանթի էլեկտրոնային կառուցվածքն է $3d^5 4S^2$: Բնական Մ. բաղկացած է մեկ կայուն իզոտոպից՝ $^{55}Mn$: Արհեստականորեն ստացվել են 50—56 զանգվածի թվերով ռադիոակտիվ իզոտոպներ, որոնցից կարևոր են $^{54}Mn(T^1/_2 = 2,9$ . օր) և $^{56}Mn(T^1/_2 = 2,576$ ժամ): Պարունակությամբ երկրակեղևում 11-րդ տարրն է (0,1%), ուր ազատ վիճակում չի հանդիպում: Տարածված բազմաթիվ միներալներից կարևոր են *պիրոլյուզիտը*, *մանգանիտը*, զաուսմանիտը ևն: Վերականգնող միջավայրում Մ. եռանդուն միգրացվում է կենսոլորտում և թթու ջրերում: Օքսիդացնող միջավայրում քիչ շարժուն է: Հողում, լճերում, ճահիճներում առաջացնում է երկաթմանգանային կուտակումներ (խոշոր կուտակումներ են հայտնաբերվել օվկիանոսների հատակում՝ 358 մլրդ *տ*): Բուսական և կենդանական օրգանիզմների մշտական բաղադրամասն է: Մ. են պարունակում շեկ մրջյունները, որոշ մանրէներ և ջրիմուռներ, մարդու օրգանիզմում՝ լյարդը, կմախքը և վահանաձև գեղձը: Մ. ակտիվացնում է որոշ ֆերմենտներ, մասնակցում ֆոտոսինթեզին, շնչառությանը, նուկլեինաթթուների կենսասինթեզին, ուժեղացնում ինսուլինի և այլ հորմոնների ազդեցությունը, խթանում արյունաստեղծումը: Մ-ի միներալները հայտնի են վաղուց. հռոմեացի Պլինիոս Ավագը (23—79) հիշատակել է հեղուկ ապակին գունազրկող սև քարի ($MnO_2$)մասին: Վերջինս՝ պիրոլյուզիտը, համարում էին երկաթի միացություն, մագնետիտի տարատեսակ: Քանի որ դրանից երկաթ չէր ստացվում, անվանեցին Մ. (XVI—XVII դդ.): Մետաղական Մ. առաջինն ստացել է շվեդ գիտնական Յու. Գանը (1774):

Մ. սպիտակ, արծաթափայլ, փխրուն մետաղ է, հալ. ջերմաստիճանը՝ 1245°C, եռմանը՝ 2150°C, խտությունը՝ 7200—7400 *կգ/մ³*, առաջացնում է 4 պոլիմորֆ ձևափոխություն: Քիմիապես ակտիվ է, միացություններում ցուցաբերում է +2-ից +7 օքսիդացման աստիճաններ: Տաքացնելիս միանում է ոչ մետաղներին. թթվածնի հետ առաջացնում է օքսիդների խառնուրդներ, ծծմբի հետ՝ սուլֆիդներ ($MnS$, $MnS_2$), ազոտի հետ՝ նիտրիդներ ($Mn_3N$, $MnN_2$, $Mn_3N_2$), ածխածնի հետ՝ կարբիդներ ($Mn_{23}C_6$, $Mn_7C_3$, $Mn_5C_6$), ֆոսֆորի հետ՝ ֆոսֆիդներ ($Mn_2P$, $MnP$): Մ-ի (II) օքսիդը՝ $MnO$, մոխրականաչ փոշի է, ջրում և ալկալիներում չի լուծվում: Լուծվում է թթուներում: Օդում օքսիդանում է: Նրա հիդրատը՝ $Mn(OH)_2$-ը, սպիտակ նստվածք է, օդում օքսիդանում է և դառնում գորշագույն: Թույլ հիմք է, աղերը բաց վարդագույն են: $Mn_2O_3$-ը սև, ամորֆ փոշի է, բնության մեջ առաջացնում է բրաունիտ միներալը: Մ-ի միացություններից ամենակայունը երկօքսիդն է $MnO_2$, որը ջրում անլուծելի, սև փոշի է: Ռեակցիաներում օքսիդիչ է ($H_2O_2$-ի, $HCl$-ի հետ) կամ վերականգնիչ ($KNO_3$-ի, $KClO_3$-ի հետ միահալելիս): Նրա հիդրատը՝ $Mn(OH)_4$-ը, գորշագույն նստվածք է, լուծվում է ալկալիներում և ուժեղ թթուներում (ամֆոտեր է): Mn(VI) պարունակող մանգանական թթուն՝ $H_2MnO_4$, գոյություն ունի միայն լուծույթներում, աղերը՝ մանգանատները, ավելի կայուն են (լուծույթներում մուգ կանաչ են): Mn(VII) պարունակող միացություններ են գերմանգանական թթուն՝ ($HMnO_4$), նրա անհիդրիդը՝ $Mn_2O_7$, և *պերմանգանատները*: Մ. ստանում է *էլեկտրաթերմիայի* կամ *ալյումինաթերմիայի* եղանակով: Վերջին դեպքում $MnO_2$-ը նախօրոք մասնակի քայքայում են շիկացնելով: Մաքուր Մ. ստանում են $MnSO_4$-ի լուծույթի էլեկտրոլիզով (Ռ. Ագլաձե, 1939) կամ հանքանյութը քլորացնելով և ստացված քլորիդները վերականգնելով: Մ. հիմնականում օգտագործվում է սև մետալուրգիայում. արտադրվող յուրաքանչյուր տոննա պողպատի համար ծախսվում է 8—9 *կգ* Մ.: Սովորաբար օգտագործում են ֆեռոմանգանական համաձուլվածքը (70—80% Մ.), որն ստանում են դոմնային վառարանում: Քիչ լեգիրացված կառուցվածքային և ռելսային պողպատը պարունակում է 0,9—1,6%, բարձր լեգիրացվածը (մաշվածադիմացկուն)՝ 15% Մ.: ՍՍՀՄ-ում արտադրվում է նիկել չպարունակող, չժանգոտվող պողպատ (15% Mn և 14% Cr): Մեխանիկական և քիմ. կայունությամբ աչքի են ընկնում Մ-ի համաձուլվածքները պղնձի հետ: Մ. ալյումինի, մագնեզիումի համաձուլվածքների մշտական բաղադրիչն է: Մ-ի միացություններն օգտագործվում են ապակու, խեցեղենի, ներկարարական, տպագրական արդյունաբերություններում, գալվանական էլեմենտներ պատրաստելու համար, գյուղատնտեսության և բժշկության մեջ:

*Լ. Գրիգորյան*

**ՄԱՆԳԱՆԻ ՀԱՆՔԱՔԱՐ**, բնական միներալային առաջացումներ, որոնց մեջ մանգանի պարունակությունը բավարար է այդ մետաղի և նրա միացությունների տնտեսապես շահավետ կորզման համար: Կարևորագույն հանք կազմող միներալներն են. *պիրոլյուզիտը*՝ $MnO_2$(63,2% Mn), *պսիլոմելանը*՝ $m \cdot MnO \cdot MnO_2 \cdot nH_2O$(45—60% Mn), *մանգանիտը*՝ $MnO_2 \cdot Mn(OH)_2$ (62,5% Mn), վերնադիտը՝ $MnO_2 \cdot H_2O$(44—52% Mn), բրաունիտը՝ $Mn_2O_3$(69,5% Mn), ռոդոնիտը՝ $(Mn, Ca)(Si_3O_9)$ (32—41% Mn) ևն: Մ. h-ում գրեթե միշտ առկա են երկաթի միներալներ: Ըստ ծագման առավել մեծ նշանակություն ունեն նստվածքային հանքավայրերը: Դրանք ներկայացված են հին ծովերի կամ լճերի ավազաններում ձևավորված շերտավոր և ոսպնյակաձև կուտակներով (ՍՍՀՄ-ում՝ Նիկոպոլի, Ճիաթուրի, արտասահմանում՝ Մարոկկոյի հանքավայրերը): Մետամորֆային հանքավայրերն առաջանում են Երկրի ընդերքում նստվածքային հանքավայրերի փոփոխության հաշվին՝ բարձր ջերմաստիճանի և ճնշման ազդեցությամբ (Արևմտյան Սիբիր, Կենտրոնական Ղազախստան): Հողմահարման հանքավայրերը կազմված են հզոր հին և ժամանակակից հողմահար-

մաև կեղևներից՝ նրանց մեջ մանգանի երկրորդային կոնցենտրացիայով (Հնդկաստան, Բրազիլիա, Գանա): Արդի օվկիանոսների հատակում կան երկաթմանգանային կոնկրեցիաների կուտակումներ, որոնք Մ. հ-ի խոշոր ռեսուրսներ են:

**ՄԱՆԳԱՆԻՆ**, պղնձի համաձուլվածքը 11—13,5% մանգանի և 2,5—3,5% նիկելի հետ: Ունի բարձր էլեկտրական դիմադրություն: Մ-ից պատրաստում են լար և ժապավեն, որոնք կիրառվում են էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ՝ առավելապես ճշգրիտ սարքերում: Առաջին անգամ ստացվել է Գերմանիայում, 1889-ին:

**ՄԱՆԳԱՆԻՏ**, միներալ: Քիմ. կազմը՝ γ—MnOOH: Խառնուրդների ձևով պարունակում է $SiO_2$, $Fe_2O_3$ ևն: Բյուրեղագիտական համակարգը մոնոկլինային է: Առաջացնում է նուրբ բյուրեղային, օոլիտային, հատիկավոր ագրեգատներ, դրուզներ: Գույնը՝ մուգ գորշից սև, փայլը՝ կիսամետաղական: Կարծրությունը՝ 4, խտությունը՝ 4300 կգ/$մ^3$: Հանդիպում է նստվածքային հանքավայրերում պիրոլյուզիտի և ռոդոխրոզիտի ֆացիաների միջև, ցածր ջերմաստիճանային հիդրոթերմալ հանքավայրերում՝ բարիտի, սիդերիտի, բրաունիտի հետ: Մանգանի կարևոր հանքանյութ է:

**ՄԱՆԳԱՍԱՐՅԱՆ** Ռաֆայել Արամի (ծն. 1.1.1927, Թիֆլիս), հայ սովետական դիրիժոր: ՀՍՍՀ ժող. արտիստ (1979): 1951-ին ավարտել է Երևանի կոնսերվատորիայի լարային (պրոֆ. Կ. Դոմբաևի դասարան), 1963-ին՝ դիրիժորական (պրոֆ. Մ. Մալունցյանի դասարան) բաժինները: Ղեկավարում է (1966-ից՝ դիրիժոր, 1969-ից՝ գլխ. դիրիժոր, 1972-ից՝ գեղ. ղեկավար) Հայաստանի հեռուստատեսության և ռադիոյի սիմֆոնիկ նվագախումբը: Նրա կատարողական արվեստին հատուկ է երաժշտ. կերպարի մեկնաբանման ժամանակակից զգացողությունը: Համերգներով հանդես է եկել ՍՍՀՄ քաղաքներում, Չեխոսլովակիայում (Պոդեբրադ քաղաքի պատվավոր քաղաքացի, 1970): 1951-ից դասավանդում է Երևանի կոնսերվատորիայում (1977-ից՝ պրոֆեսոր):

*Մ. Պետրոսյան*

**ՄԱՆԳԸՇԼԱԿ**, թերակղզի Կասպից ծովի արևելյան ափին, Ղազախական ՍՍՀ-ում: Կասպից ծովի մակարդակի իջնելու և Կոմսոմոլեց ծոցի մեծ մասի ցամաքելու կապակցությամբ ձևափոխվում է Մ-ի թերակղզային դիրքը: Հիմնական մասը կազմում են Մանգըսթաու լեռները (առավելագույն բարձրությունը՝ 556 մ, Բեսշոկի լեռ): Թերակղզու արմ-ում է գտնվում Տյուբ-Կարագան սարավանդանման թերակղզին, հվ-ում՝ Մանգըշլակ սարավանդը՝ Կարագիե (—132 մ) և Կաունդի (—57 մ) աղուտային իջվածքներով, հս-ում՝ Բուզաչի ցածրադիր թերակղզին: Մ-ում տիրապետում են անապատային լանդշաֆտները: Կան նավթահանքեր:

**ՄԱՆԳԸՇԼԱԿԻ ՄԱՐԶ**, Ղազախական ՍՍՀ կազմում: Կազմվել է 1973-ի մարտի 20-ին: Գտնվում է հանրապետության հվ-արմ-ում, Կասպից ծովից արլ.: Տարածությունը 166,6 հզ. $կմ^2$ է, բնակչությունը՝ 261 հզ. (1980): Բաժանվում է վարչական 3 շրջանի, ունի 3 քաղաք, 13 քտա: Կենտրոնը՝ Շևչենկո:

**Բնությունը**: Մ. մ. գտնվում է Մերձկասպյան դաշտավայրում: Մակերևույթը հարթավայրային է (Կասպից ծովի ափը օվկիանոսի մակարդակից 28 մ ցածր է, արլ-ում բարձրանում է մինչև 200—220 մ), Աշիսոր (—39 մ), Կարագիե (—132 մ, ամենախոր իջվածքը ՍՍՀՄ-ում) իջվածքներով: Մարզի կենտրոնական մասում Մանգըշլակի սարավանդն է, որի եզրերին տարածված են անհոսք աղուտային իջվածքներ: Հս-արմ-ից դեպի հվ-արլ. ձգվում են Մանգըսթաու լեռները (Բեսշոկը լեռ՝ 556 մ): Հվ-արլ-ում բարձրանում են Ուստյուրտ սարավանդի արմ. ծայրամասերը (230—340 մ բարձրությամբ): Կասպից ծովի մակարդակն իջնելու հետևանքով գոյացել են առափնյա աղուտային ընդարձակ տարածություններ (Մորի Կայդակ, Մյորտվի Կուլտուկ ևն): Կան նավթի, բնական գազի, ածխի, երկաթահանքի, պղնձի, ֆոսֆորիտների, շինքարի հանքավայրեր: Կլիման խիստ ցամաքային է: Բնորոշ են ուժեղ քամիներն ու փոթորիկները: Հունվարի միջին ջերմաստիճանը —3°C-ից մինչև —4°C է, ձնածածկույթը՝ աննշան, հուլիսի միջին ջերմաստիճանը՝ 26—27°C, տարեկան տեղումները՝ 100—160 մմ, վեգետացիոն շրջանը՝ 230 օր:

Գերակշռում են աղուտներով նոսր բուսականությամբ ավազակավային և քարային անապատները:

**Բնակչությունը**՝ ղազախներ, ռուսներ, ուկրաինացիներ, թաթարներ և այլք: Միջին խտությունը 1 $կմ^2$ վրա 1,6 մարդ է (1980), քաղաքային բնակչությունը՝ 88% (1980): Բնակչությունը կենտրոնացած է Կասպից ծովի ափին և նավթահանքերի շրջաններում: Քաղաքներն են Շևչենկոն, Նովի Ուզենը և Ֆորտ Շևչենկոն:

**Տնտեսությունը**: Մ. մ. ձկնարդյունաբերության և ձևավորվող գազաքիմիական համալիրի հետ Ղազախստանի նավթիգազի գլխավոր շրջանն է: Նավթի արդյունահանման գլխավոր շրջանը Ուզենն է: Էներգետիկան խարսխված է տեղական և բերովի նավթանյութերի և ատոմային էներգիայի վրա: Շևչենկոյում է ատոմային համալիրը (ատոմային էլեկտրակայանով և ծովաջրի աղազատիչով), Ուզենում՝ գազավերամշակման գործարանը: Կան վերանորոգման ձեռնարկություններ, շինանյութերի արդյունաբերություն (Շևչենկո, Ուզեն): Զարգանում է ձկան պահածոների, մսի-կաթի արդյունաբերությունը:

Գյուղատնտեսությունը մասնագիտանում է անասնապահության ուղղությամբ (ոչխարաբուծություն, ուղտաբուծություն, ձիաբուծություն): Գյու-



ղատնտ. հողահանդակները մոտ 13 մլն *հա* են: Հողագործությունը հնարավոր է միայն արհեստական ոռոգման պայմաններում:

**Տրանսպորտը**: Երկաթուղիների ընդհանուր երկարությունը մոտ 700 *կմ* է (1978): Գլխավորը Նովի Ուզեն—Շևչենկո—Մակատ երկաթուղին է: Գործում են Ուզեն—Ժետըբայ—Շևչենկո, Ուզեն—Գուրև—Կույբիշև նավթամուղները, Ժետըբայ—Շևչենկո, Ուզեն—Բայնեու գազամուղները: Մանգըշլակը Կասպից ծովով կապված է Բաքվի, Աստրախանի, Գուրևի, Կրասնովոդսկի, Մախաչկալայի հետ: Կառուցվում են նավահանգստային կառույցներ Շևչենկոյում, Երալիևում, Բաուտինոյում: Ավտոճանապարհների երկարությունը 4 հզ. *կմ* է: Ավիագծերով Շևչենկոն կապված է Մոսկվայի, Գուրևի, Ալմա Աթայի և այլ քաղաքների հետ:

**Լուսավորությունը և առողջապահությունը**: 1979—80 ուս. տարում կար 82 հանրակրթական դպրոց, 4 պրոֆտեխնիկական ուսումնարան: 1980-ին մարզն ուներ 76 գրադարան, 107 ակումբ, 110 կինոկայանք, Տ. Գ. Շևչենկոյի թանգարան, մարզային 2 թերթ, 30 հիվանդանոցային հիմնարկ, 315 բժիշկ, հակատուբերկուլոզային առողջարան:

**ՄԱՆԳԼՅԱՑ ՓՈՐ**, գավառ Մեծ Հայքի Գուգարք նահանգում (հավանաբար՝ Ալ գետի ձորահովտում): IV դ. վերջերին անջատվել է Գուգարքից և միացել Վրաց աշխարհին: Վրաց աղբյուրներում կոչվել է Մանգլիսիս-խևի:

*Գրկ.* Ե ր ե մ յ ա ն Ս. Տ., Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, Ե., 1963:

**ՄԱՆԳԼԻՍ**, քաղաքատիպ ավան Վրացական ՍՍՀ Թեթրիծղարոյի շրջանում, շրջկենտրոնից 41 *կմ* հյուսիս, Թբիլիսիից 56 *կմ* արևմուտք: Գտնվում է Թրիալեթի լեռնաշղթայի հվ. լանջին, Թբիլիսի—Բոգդանովկա խճուղու վրա: Բնակչությունը՝ վրացիներ, հայեր, ռուսներ: Կաթնամսանապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև այգեգործությամբ: Մ-ում է Թբիլիսիի «Իսանի» կոշիկի ֆաբրիկայի մասնաճյուղը: Ունի միջնակարգ դպրոցներ, գրադարան, կուլտուրայի տուն, կինոթատրոն, կապի բաժանմունք, հիվանդանոց, կենցաղսպասարկման օբյեկտներ: Մ. լեռնակլիմայական առողջարան է: Կան շնչառական օրգանների հիվանդություններով (նաև տուբերկուլոզով) տառապող մանուկների ու դեռահասների սանատորիաներ: Մ. Վրաստանի հնագույն քաղաքներից է՝ պատմության մեջ հայտնի Մանգլյաց փոր անվամբ: IV դ. մտել է Քարթլիի կազմի մեջ: Մ-ում պահպանվել է Կոստանդիանոս կայսրի կառուցած եկեղեցին: 1121-ին Մ-ի մոտ տեղի է ունեցել ճակատամարտ վրաց. և թուրք. զորքերի միջև, որն ավարտվել է վրացիների հաղթանակով: Հայերը Մ-ում բնակություն են հաստատել վաղ ժամանակներից, ունեն եկեղեցի, գերեզմանատուն և պատմական այլ հուշարձաններ:

**ՄԱՆԳՈ** (Mangifera), աղտորազգիների ընտանիքի մշտադալար ծառերի ցեղ: Հայտնի է Մ-ի 40 տեսակ՝ տարածված Հարավային և Հարավ-Արևելյան Ասիայի արևադարձային շրջաններում: Կարևոր պտղատու տեսակներից է հ ն դ կ ա կ ա ն Մ. (M. indica), որը խիտ սաղարթով, փայլուն, երկարավուն կամ էլիպսաձև տերևներ ունեցող ծառ է: Բարձրությունը 10—45 *մ* է, ծաղիկները մանր են, երկտուն՝ հավաքված հուրանում: Պտուղները խոշոր են, դեղնականաչավուն: Պտղամիսը նարնջագույն է՝ բուրավետ, յուրահատուկ համով: Մ-ի բազմաթիվ տեսակների պտուղներն օգտագործվում են սննդի մեջ: ՍՍՀՄ-ում հանդիպում է միայն ջերմատներում:

**ՄԱՆԳՈՒՍՏՆԵՐ** (Herpestes), *վիվերների* ընտանիքի գիշատիչ կաթնասունների սեռ: Միջին մեծության կենդանիներ են, մարմնի երկարությունը 23—64 *սմ* է, պոչինը՝ 23—51 *սմ*, քաշը՝ 0,5—3 *կգ*: Մորթին կոշտ է՝ միագույն կամ բծավոր: Հայտնի է 17 տեսակ, որից 6-ը տարածված է Աֆրիկայում, 10-ը՝ Հարավային Ասիայում, 1-ը՝ Եվրոպայում: Ապրում են անտառներում, թփուտներում, եղեգնուտներում, երբեմն՝ բնակավայրերին մոտ: Գիշերային կյանք են վարում: Սնվում են մանր ողնաշարավոր կենդանիներով, մասամբ՝ անողնաշարավորներով, կարող են հարձակվել ընտանի թռչունների վրա: Որոշ տեսակներ օգտակար են, ոչնչացնում են թունավոր օձերին:

**ՄԱՆԴԱԼԱՅ**, Մ ա ն դ ա լ է, քաղաք Բիրմայական Միությունում, Իրավադի գետի ափին: Մանդալայ օկրուգի վարչական կենտրոնն է: 417 հզ. բն. (1973): Տրանսպորտային հանգույց է, գետային նավահանգիստ, բամբակեղենի, բոժոժից թել քաշելու, փայտասղոցման արդյունաբերության կենտրոն: Կան նավանորոգման և երկաթուղային արհեստանոցներ, մետաքսյա գործվածքների և բրուտագործական իրերի արտադրություն: Հիմնադրվել է 1857-ին:

**ՄԱՆԴԱԼՅԱՆ** Թաթևոս Գեղամի (5.7.1901, Ալեքսանդրապոլ —1938), կուսակցական և պետական գործիչ: ՍՄԿԿ անդամ 1917-ից: Ավարտել է Թիֆլիսի Ներսիսյան դպրոցը: Ուսման տարիներին աշխատակցել է «Նոր սերունդ» ինտերնացիոնալիստական աշակերտական շաբաթաթերթին, եղել Թիֆլիսի «Սպարտակ» կազմակերպության հիմնադիրներից: 1918-ին Հյուսիսային Կովկասում կռվել է դենիկինյան զորքերի դեմ: 1919—20-ին ընդհատակյա կուսակցական աշխատանք է տարել Թիֆլիսում, որի համար արտաքսվել է Հայաստան:



Թ. Գ. Մանդալյան

Մասնակցել է Մայիսյան ապստամբությանը (1920): Եղել է «Գուդոկ» («Гудок», 1923—24), Պրոֆինտերնի «Տեղեկագիր» (1924—26, Մոսկվա), «Խորհրդային Հայաստան» (1928) թերթերի խմբագիր: 1926—27-ին Չինաստանում կռվել է Շանհայի ապստամբների շարքերում: 1928-ին ընտրվել է Հայաստանի Արհեստակցական միությունների խորհրդի նախագահ: 1928—36-ին աշխատել է ՀՍՍՀ Բանգյուղտեսչության ժողկոմ, ՀԿԿ Կենտկոմի վերստուգիչ հանձնաժողովի նախագահ և ՀՍՍՀ Ժողկոմխորհի նախագահի տեղակալ: 1936—38-ին Մ. մասնակցել է Իսպանիայում մղված քաղաքացիական պատերազմին՝ հանրապետականների շարքերում: Եղել է ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ (1929—31): Հեղինակ է միջազգային բանվորական և ազգային-ազատագրական շարժումներին նվիրված մի շարք գիտական աշխատությունների:

*Երկ.* Մայիսյան ապստամբությունը, Ե., 1929: Միջազգային կարմիր օրը, Ե., 1929:

*Գ. Մանուկյան*

**ՄԱՆԴԱԿՈՒՆԻՆԵՐ**, նախարարական տոհմ Հին Հայաստանում: Ըստ ավանդության Մ. անունն առաջացել է տոհմի հիմնադիր նախնի Միանդակի անունից, որին *Վաղարշակ* թագավորը շնորհել էր նախարարի աստիճան և կարգել արքունի որսերի գործակալ: III դ. 2-րդ կեսին Սասանյանների հրամանով Մ. սրատվում են, որովհետև Հայոց թագավոր Խոսրով Ա Մեծի սպանությունից հետո արքայազն Տրդատ մանկանը նրա դայակ Արտավազդ Մանդակունին փախցրել էր հռոմ. արքունիք: Տրդատ Գ Մեծի գահակալումից հետո Հայոց զորքերի սպարապետությունը հանձնարարվեց Արտավազդ Մանդակունուն, որը շուտով զոհվեց կովկասյան ցեղերի դեմ մղած մարտերից մեկի ժամանակ: V դ. Մ. տիրում էին ապարեգից հեռացած Արշամունիների տոհմական Արշամունիք գավառը: Ըստ Սահակյան Գահնամակի, Մ. արքունիքում զբաղեցրել են 47-րդ բարձը: Իսկ ըստ Զորանամակի, Հայոց բանակը համալրել են 300 մարտիկով: Վարդանանց պատերազմի ժամանակ Պարսկաստանում աղյանի կանչված հայ նախարարների թվում էին Մանդակունի Սահակ և Փարսաման եղբայրները: Նույն դարի հայտնի դեմքերից էր *Հովհաննես Ա Մանդակունին* կաթողիկոսը:

*Գրկ.* Մ ո վ ս ե ս Խ ո ր ե ն ա ց ի, Պատմություն Հայոց, Ե., 1968: А д о н ц Н., Армения в эпоху Юстиниана, Е., 1971.

*Ս. Տեր-Ղևոնդյան*

**ՄԱՆԴԱՆ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Վանի վիլայեթի Արծակ գավառում: 1909-ին ուներ 35 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը 1915-ի հուլիսին, ռուս. զորքերի նահանջի ժամանակ, գաղթել և բնակություն են հաստատել Արևելյան Հայաստանում:

**ՄԱՆԴԱՏ** (լատ. mandatum — հանձնարարություն), լիազորություն, հանձնարարություն: Մ. է կոչվում նաև անձին լիազորություն տվող փաստաթուղթը (օրինակ, դեպուտատական Մ.): Տերմինն առաջացել է հռոմ. իրավունքում՝ *հանձնարարության* պայմանագիրը նշելու համար: Միջազգային իրավունքում Մ. էր կոչվում այն լիազորությունը, որով *Ազգերի լիգայի* անունից որևէ պետությանը տրվում էր Թուրքիայի տիրույթները կամ Գերմանիայի նախկին գաղութները կառավարելու իրա-

վունք: Տես նաև *Մանդատային տերիտորիաներ*:

**ՄԱՆԴԱՏԱՅԻՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐ**, 1 համագումարներում, կոնֆերանսներում, կոնգրեսներում ստեղծված հանձնաժողովներ՝ պատգամավորների լիազորություններն ստուգելու համար: 2. ՍՍՀՄ Գերագույն սովետի պալատներում, միութենական և ինքնավար հանրապետությունների Գերագույն սովետներում և ժող. դեպուտատների տեղական սովետներում ստեղծվող հանձնաժողովներ՝ դեպուտատների լիազորություններն ստուգելու համար: Ընտրվում է տվյալ գումարման սովետի առաջին նստաշրջանում՝ դեպուտատների կազմից:

**ՄԱՆԴԱՏԱՅԻՆ ՏԵՐԻՏՈՐԻԱՆԵՐ**, առաջին համաշխարհային պատերազմից հետո Գերմանիայի նախկին գաղութների և Թուրքիայի որոշ տիրույթների ընդհանուր անվանումը, որոնք Ազգերի լիգայի *մանդատով* հանձնվել էին հաղթող պետությունների կառավարմանը: Մանդատային համակարգով փաստորեն սահմանվում էր գաղութային տիրապետության նոր՝ քողարկված կարգ, hoգուտ Անգլիայի ու Ֆրանսիայի: Ըստ Ազգերի լիգայի ստատուտի, Մ. տ-ի մեջ ներառվող տերիտորիաները այս կամ այն պետության կառավարման էին հանձնվում, նկատի ունենալով, որ նրանք տվյալ պահին ի վիճակի չեն պետ. իշխանությունն իրականացնել ինքնուրույն: Մ. տ. բաժանվում էին «A», «B», «C» խմբերի: «A» խմբի տերիտորիաներում ձևականորեն կազմակերպվում էին պետություններ՝ սեփական *քաղաքացիությամբ* և վարչական ապարատով: Իրականում օրենսդրության, ներքին քաղաքականության և արտաքին հարաբերության բոլոր հարցերը, ընդհուպ մինչև լիակատար ինքնուրույնություն ստանալը, լուծում էր կառավարող՝ հանձնակատար պետությունը (Անգլիան՝ Իրաքում, Պաղեստինում, Անդրհորդանանում, Ֆրանսիան՝ Սիրիայում և Լիբանանում): «B» խմբի տերիտորիաներն անմիջականորեն կառավարում էր (որոշ պայմանների պահպանմամբ) հանձնակատար պետությունը (Կամերունի, Տոգոյի և Տանգանիկայի մի մասը՝ Մեծ Բրիտանիան, Կամերունի, Տոգոյի մի մասը՝ Ֆրանսիան, Ռուանդա-Ուրունդին՝ Բելգիան): «C» խմբի Մ. տ. ամբողջությամբ կառավարվում էր հանձնակատար պետության օրենքներով և համարվում այդ պետության բաղկացուցիչ մասը (Հարավ-Արևմտյան Աֆրիկա, Նոր Գվինեա, Արևմտյան Սամոա, Նաուրու, Կարոլինյան, Մարիանյան, Մարշալյան խաղաղօվկիանոսյան կղզիները): «B» և «C» խմբերի տերիտորիաներում հանձնակատար պետությունների իշխանությունն անսահմանափակ էր, չնայած ձևականորեն արգելվում էր ստրկավաճառությունը, զենքի և ալկոհոլի առևտուրը: Մ. տ-ում հանձնակատար պետությունները պարտավոր էին ապահովել խղճի ազատություն, չկառուցել ռազմ. բազաներ, չսովորեցնել հիմնական բնակչությանը ռազմ. գործ: Սովետական պետությունը մանդատային կարգը չի ճանաչել և խստորեն քննադատել է: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո մանդատային կարգին փոխարինել է ՄԱԿ-ի *միջազգային խնամակալության* համակարգը:

**ՄԱՆԴԱՐԻՆ** (ֆրանս. mandarine, < իսպան. mandarin), սապատազգիների ընտանիքի Citrus ցեղի մշտադալար բույս: Ըստ որոշ հետազոտողների Մ-ի բոլոր ձևերը պատկանում են մեկ տեսակի՝ սովորական Մ-ին (C. reticulata), իսկ մյուսներն առանձնացնում են դրա մինչև 13 տեսակ: Առավել տարածված է ճ ա պ ո ն ա կ ա ն Մ. (C. unshiu), որը թույլ աճեցողությամբ, 2—3 *մ* բարձրության ծառ է: Տերևները խոշոր են, օվալաձև, երբեմն՝ ծալքավոր, վերևի մակերեսը՝ մուգ կանաչ գույնի, թույլ զարգացած տերևակիցներով: Ծաղիկները՝ երկսեռ, սպիտակ: Ինքնափոշոտվող բույս է: Պտուղները՝ տափակ-կլորավուն, կեղևը՝ կաշենման, հաստ, բաց նարնջագույն, հեշտությամբ անջատվում է պտղամսից, կազմված է առանձին բաժնյակներից (ճաղերից), որոնք պատված են շատ բարակ, սպիտակ, թելանման հավելվածքներով: Հյութալի է, քաղցր, թթվաշ, հաճելի համով և բույրով: Պարունակում է մինչև 12% շաքարներ, 0,9—1,0% կիտրոնաթթու, 0,45% պեկտինային նյութեր, ինչպես նաև հանքային նյութեր ու վիտամիններ: Պտուղներն օգտագործվում են թարմ և վերամշակված վիճակում (հյութեր, մուրաբաներ): Մ. աճում է արևադարձային և մերձարևադարձային այն շրջաններում, որտեղ ձմռանը ջերմաստիճանը —8°C-ից ցածր չի լինում: ՍՍՀՄ-ում մշակվում է Վրաց. ՍՍՀ-ում, Աբխազ. և Աջար. ԻՍՍՀ-ներում, Ադրբ. ՍՍՀ Լենքորանի և Ղրիմի մարզի որոշ շրջաններում: Մ. բերք է տալիս տնկումից 3—4 տարի հետո: Ապրում է 30—40 տարի: Բազմանում է աչքապատվաստով, ինչպես նաև կտրոններով: Որպես պատվաստակալ օգտագործվում է վայրի եռտերևային կիտրոնը (C. trifoliata): Վեգետացիայի ընթացքում կարող է տալ 3—4 աճ: ՍՍՀՄ-ում հիմնականում տարածված են ունշիու տեսակի Պիոներ-80, Կարտալի, Սաղերիս, Սոչինսկի-23 սորտերը: Մշակվում է նաև ի տ ա լ ա կ ա ն Մ. (C. deliciosa):

*Ա. Մարգարյան*

**ՄԱՆԴԱՐԻՆ** (պորտուգ. mandarin, < սանսկրիտ. մանտրին — խորհրդական), ֆեոդալական Չինաստանի աստիճանավորների պորտուգալացիների տված անվանումը: Պորտուգալերենից անցել է ռուս. և եվրոպական լեզուներին: Ժամանակակից գիտական գրականության մեջ «Մ.» տերմինը չի օգտագործվում:

**ՄԱՆԴԵ ԼԵՋՈՒՆԵՐ**, տես *Աֆրիկյան լեղուներ*:

**ՄԱՆԴԵԼՇՏԱՄ** Անդրեյ (1869—1939), ռուս դիվանագետ: Միջազգային իրավունքի դոկտոր: Եղել է Կ. Պոլսում ռուս. դեսպանության թարգման (դրագոման): 1912—1914-ին մասնակցել է հայկ. բարենորոգումների (տես *Հայկական բարենորոգումներ 1913—14*) խնդրի դիվանագիտական քննարկումներին, 1914-ի ռուս-թուրքական համաձայնագրի հոդվածների մշակմանը: Առաջին համաշխարհային պատերազմի (1914—18) տարիներին ակտիվորեն հանդես է եկել արևմտահայության իրավունքների պաշտպանությամբ, երիտթուրքերի չարագործությունների դատապարտմամբ, մասնակցել է հայ գաղթականության օգտին ռուս հասարակության ձեռնարկած միջոցառումներին: Գրել է աշխատություններ միջազգային հարաբերությունների, *Հայկական հարցի*, Թուրքիայի նոր և նորագույն պատմության վերաբերյալ:

*Երկ.* Երիտասարդ թուրքերի պետությունը, Էջմիածին, 1916: Օսմանյան կայսրության ճակատագիրը և հայկական հարցը, մաս 1, ԿՊ, 1919: Le sort de L'Empire ottoman, Lausanne—P., 1917; La société des Nations et les Puissances devant la Problème Arménien, P., 1926.

*Ջ. Կիրակոսյան*

**ՄԱՆԴԵԼՇՏԱՄ** Լեոնիդ Իսահակովիչ (1879—1944), սովետական ֆիզիկոս: ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս (1929), Մոսկվայի համալսարանի պրոֆեսոր (1925): Աշխատանքները վերաբերում են օպտիկային, տեսական ֆիզիկային, ռադիոֆիզիկային, ռադիոտեխնիկային: Առաջինն է ապացուցել (1907), որ օպտիկապես անհամասեռ միջավայրերում լույսի ցրումը



Լ. Ի. Մանդելշտամ

պայմանավորված է միկրոանհամասեռությունների առաջացումով: 1918-ին կանխագուշակել է Ռելեյի գծի նուրբ կառուցվածքի երևան գալը (նման տեսություն մշակել է նաև Լ. Բրիլյուենը, 1922-ին): 1928-ին Գ. Ս. *Լանդսբերգի* հետ հայտնագործել է *լույսի կոմբինացիոն ցրումը* (Չ. *Ռամանից* և Կ. Ս. Կրիշնանից անկախ): Ն. Դ. Պապալեկսիի հետ հիմնարար աշխատանքներ է կատարել տատանումների ոչ գծային տեսության բնագավառում: Նրանք առաջարկել են էլեկտրական տատանումների գրգռման նոր մեթոդ, ստեղծել (1931) փոփոխական հոսանքի պարամետրական գեներատոր՝ պարբերաբար փոփոխվող ինդուկտիվությամբ, մշակել (1938) հեռավորությունների ճըշգրիտ չափման ռադիոինտերֆերենցիոն մեթոդ: Արժանացել է Վ. Ի. Լենինի անվ. (1931) և ՍՍՀՄ պետ. (1942) մրցանակների:

**ՄԱՆԴԵԼՇՏԱՄ** Օսիպ Էմիլիչ [3(15).1. 1891, Վարշավա —27.12.1938], ռուս սովետական բանաստեղծ, արվեստի տեսաբան, թարգմանիչ: 1907—10-ին սովորել է Սորբոնի և Հայդելբերգի համալսարաններում, 1911-ին՝ Պետերբուրգի համալսարանի ռոմանա-գերմ. բաժնում: Տպագրվել է 1910-ից՝ «Ապոլլոն» ամսագրում (№ 9): Վաղ շրջանի բանաստեղծություններում նկատելի է սիմվոլիզմի ազդեցությունը: Մ. *ակմեիզմի* հիմնադիրներից է (1912-ից): 1918—21-ին աշխատել է կուլտուր-լուսավորական հիմնարկներում, եղել Ղրիմում, Վրաստանում:

Հրատարակել է «Քար» (1913, 2-րդ լրացված հրտ. 1916), «Tristia» (1922, «Երկրորդ

գիրք» վերնագրով՝ 1923), «Բանաստեղծություններ» (1928) և «Ժամանակի աղմուկը» (1925, ինքնակենսագրական պատմվածքներ) ժողովածուները, «Եգիպտական մակնիշ» (1928) վիպակը: Մ. Միջագետքը, Հայաստանն ու Անդրկովկասը համարել է մարդկային քաղաքակրթության օրրաններից մեկը: Նա ցուցաբերել է մեծ հետաքրքրություն Հայաստանի և հայ մշակույթի հանդեպ:

1930 թվականի մայիսից մինչև նոյեմբերը Մ. եղել է Հայաստանում, այցելել պատմաճարտարապետական հուշարձաններն ու կոթողները, մտերմացել Ե. Չարենցի, Ա. Հովհաննիսյանի, Ա. Կարինյանի և ուրիշների հետ: Փորձել է գրաբար սովորել, որոշել է «Արշակ և Շապուհ» թեմայով գործ գրել:

Հայաստան կատարած ուղևորության արգասիք է Մ-ի 13 բանաստեղծությունների շարքը («Новый мир», 1931, № 3), որտեղ նա անդրադարձել է հայոց լեզվին ու մշակույթին, Հայաստանի պատմությանը, նրա ազդեցությանը եվրոպական մշակույթի վրա, փառաբանել հայ աշխատավորին: «Ճանապարհորդություն Հայաստանում» («Звезда», 1933, № 5) էսսեում խորհրդածում է մարդկության պատմության և աշխարհի լեզուների, ֆրանս. իմպրեսիոնիզմի և Լուսավորականության շուրջը: Մ-ի համար Հայաստանը «Երկրի գիրքն է... որով սովորել են առաջին մարդիկ»: Տեսական լուրջ արժեք են ներկայացնում «Բառ և մշակույթ», «Բառի բնության մասին» (երկուսն էլ՝ «Պոեզիայի մասին» ժողովածուի մեջ, 1928) հոդվածները, «Զրույցներ Դանթեի մասին» (1933, հրտ. 1967) գրական-քննադատական էսսեն, Պ. Չաադաեվին, Ֆ. Վիյոնին, Ա. Շենիեին նվիրված ուսումնասիրությունները: Մ. թարգմանել է Վ. Սկոտի, Շարլ դը Կոստերի, Ժ. Ռոմենի, Ժ. Դյուամելի, Ռ. Ստիվենսոնի և ուրիշների ստեղծագործություններից:

*Թ. Մակուչյան*

**ՄԱՆԴԻՆՅԱՆ** Ամիրան Մանդենի [19.4 (1.5).1848, Թիֆլիս —15(28).5.1913, Թիֆլիս], հայ մանկավարժ, դերասան, թարգմանիչ: 1860—69-ին սովորել է Լազարյան ճեմարանում: 1870—1900-ին դասավանդել է Ներսիսյան, 1878—79-ին՝ Ալեքսանդրապոլի վիճակային դպրոցներում: Պրոֆեսիոնալ բեմ է բարձրացել 1873-ին, Թիֆլիսում, Գիժ Մոզու (Սունդուկյանի «Քանդած օջախ») դերով: 1879—81-ին աշխատել է Թիֆլիսի հայոց դերասանական մշտական խմբում, ապա, մինչև 1910-ը, մասնակցել պատահական ներկայացումների: Մ. ռեալիստական ուղղության դերասան էր, կատակերգական և բնութագրային դերերի լավագույն կատարող: Դերերից են՝ Կակուլի (Սունդուկյանի «Պեպո»), Յուսով (Ա. Օստրովսկու «Եկամտաբեր պաշտոն»), Պոլոնիուս (Շեքսպիրի «Համլետ»): Թարգմանել է Շեքսպիրի «Անսանձ կնոջ սանձահարումը», Շիլլերի «Սեր և խարդավանք», Մոլիերի «Դոն Ժուան» պիեսները:

*Բ. Հովակիմյան*

**ՄԱՆԴԻՆՅԱՆ** Սեդրակ Ավետի (22.9.1844, Թիֆլիս —28.11. 1915, Թիֆլիս), հայ մանկավարժ, դերասան, հասարակական, գրական-թատերական գործիչ: Կրթությունն ստացել է Թիֆլիսում, Մոսկվայի Լազարյան ճեմարանում (1857—63), Պետերբուրգի համալսարանում (1869), ապա՝ Գոթայի (Գերմանիա) ուսուցչական սեմինարիայում, Հայդելբերգի, Լայպցիգի և Վիեննայի համալսարաններում: Խորացել է մանկվ. և հոգեբանական գիտություններում: 1864—1868-ին աշխատել է Թիֆլիսի հայկ. թատրոնում, Գ. Չմշկյանի, Մ. Ամրիկյանի հետ շրջագայել Շուշիում, Ալեքսանդրապոլում և Երևանում (1865): 1879—80-ին եղել է Թիֆլիսի Հայոց դերասանական մշտական խմբի դերասան ու ռեժիսոր: Որպես տեսուչ աշխատել է Թիֆլիսի Ներսիսյան (1874—78), դասավանդել՝ Շուշիի թեմական դպրոցներում: 1881—1900-ին (ընդհատումով) եղել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանի մանկավարժության և հոգեբանության դասատու: Մ. զբաղվել է դիդակտիկայի հարցերի ուսումնասիրությամբ, կարևորել դպրոցականի տարիքային և հոգեկան զարգացման առանձնահատկությունները, հանդես է եկել սխոլաստիկ մանկավարժության դեմ: Գրել է կրթությանն ու դաստիարակությանը նվիրված մոտ 200 հոդված: Կազմել է «Դպրոցական սահմանադրություն» (1875), «Նահապետական ու հայրենի աշխարհ» (1878), «Ազգային ընտանեկան աշխարհ» (1880), «Համառոտ մանկավարժություն» (1878), «Կյանքի հանգամանքների համեմատ թվաբանություն» (1881), «Ռուսաց լեզվի դասատվության եղանակ» (1886), «Ռուսերենի տարրական քրեստոմատիա հայերի համար» (1906) և բազմաթիվ այլ դասագրքեր ու ձեռնարկներ: Գրախոսել է Ռ. Պերպերյանի, Ս. Շահազիզի, Հովհ. Հովհաննիսյանի, Ղ. Աղայանի, Հ. Թումանյանի և ուրիշների գրքերը: Կատարել է թարգմանություններ:



Ա. Մ. Մանդինյան



Ս. Ա. Մանդինյան

*Գրկ.* Դանիելյան Ա. Գ., Սեդրակ Մանդինյան, Ե., 1964:

*Ա. Դանիելյան, Բ. Հովակիմյան*

**ՄԱՆԴՈԼԻՆ** (իտալ. mandolino), լարավոր կսմիթային նվագարան: Ստեղծվել է Իտալիայում, վերջնական տեսք ստացել XVII դ.: Ամենատարածված տեսակը նեապոլիտանական Մ. է. ունի ուռուցիկ, ձվաձև իրան, կարճ վզիկ, 4 զույգ լարեր: Լարվածքը կվինտային է: Նվագում են կնտընտոցով: Մ. հիմնականում մենակատարային գործիք է, երբեմն մտնում է օպերային և սիմֆոնիկ նվագախումբ: Մ-ների նվագախումբը (որպես կանոն՝ կիթառների հետ) կոչվում է նեապոլիտանական:

**ՄԱՆԵ** (Manet) Էդուարդ (1832—1883), ֆրանսիացի նկարիչ: Ապրել է հիմնականում Փարիզում, ուր սովորել է Գեղեցիկ արվեստների դպրոցում (1850—56): Ընդօրինակել է իտալ. Վերածննդի և XVII դ. վարպետների (Ջորջոնե, Տիցիան, Դ. Վելասկես, Ֆ. Հալս), ինչպես և Ֆ. Գոյայի, Է. Դելակրուայի ստեղծագործությունները, կրել նրանց ազդեցությունը: Վաղ շրջանի աշխատանքներում (1850-ական թթ. վերջ—1860-ական թթ. սկիզբ) կերպարների կենսական հավաստիությունը զուգորդված է ռոմանտիկ հոգեվիճակների հետ («Վալենսիացի Լոլան», 1862, Իմպրեսիոնիզմի թանգարան, Փարիզ): Օգտագործելով և վերաիմաստավորելով հին վարպետների սյուժեներն ու մոտիվները՝ Մ. ձգտել է լուծել գեղանկարչական նոր խնդիրներ («Նախաճաշ բնության գրկում», 1863, «Օլիմպիա», 1863, երկուսն էլ՝ Իմպրեսիոնիզմի թանգարան, Փարիզ): Աստիճանաբար հրաժարվելով մուգ, հոծ երանգներից և սև ստվերներից՝ Մ. իր պատկերները հարստացրել է թափանցիկ անդրադարձումներով ու վայլոցներով: Մ. դիմել է արդի պատմությանը, արձագանքել 1871-ի Փարիզի կոմունայի իրադարձություններին («Կոմունարների գնդակահարությունը», ջրաներկ, 1871, Կերպարվեստի թանգարան, Բուդապեշտ), սակայն նրա ուշադրության կենտրոնում ժամանակակից կյանքն էր, առօրյան («Նախաճաշ արվեստանոցում», 1868, Նոր պատկերասրահ, Մյունխեն): Իր արվեստով կանխորոշելով *իմպրեսիոնիզմը*՝ Մ. 1860-ական թթ. վերջերին մերձեցել է նրա վարպետների



Է. Մանե

(Է. Դեգա, Կ. Մոնե, Օ. Ռենուար) հետ և 1870-ական թթ. սկզբին անցել պլեներային նկարչությանը («Մոնեն և տիկին Մոնեն նավակում», 1874, Նոր պատկերասրահ, Մյունխեն), միաժամանակ, իմպրեսիոնիստներին հակառակ, պահպանել է գծանկարի կառուցվածքային պարզությունը: Մեծ քաղաքի խայտաբղետության մեջ Մ. ընտրել է առավել բնորոշ իրավիճակներ՝ զուգորդելով գեղանկարչական և հոգեբանական նրբագծերը («Պարահանդես-դիմակահանդես օպերայում», 1873, Հավեմեյեր հավաքածու, Նյու Յորք): Իր ամենանշանակալից և վերջին՝ «Ֆոլի-Բերժեր» բարը» (1881—82, Կուրտո ինստիտուտ, Լոնդոն) գործում, որ մարմնավորում է երազանքի և իրականության բախման, ամբոխի մեջ մարդու միայնակության թեման, Մ. հասել է մտահղացման, կոմպոզիցիոն լուծման և գեղանկարչական բովանդակության լիակատար ամբողջականության: 1870-ական թթ. ստեղծել է նատյուրմորտներ, բնանկարներ, գծանկարներ, հիմնականում՝ դիմանկարներ, ընդլայնել այդ ժանրի հնարավորությունները (Ս. Մալարմեի դիմանկարը, 1876,

Իմպրեսիոնիզմի թանգարան)։ Մ-ի ստեղծագործությունը ավարտում է XIX դ. ֆրանս. ռեալիստական արվեստի ավանդույթների կազմավորումը, միաժամանակ նորոգում դրանք։ Նրա առաջադրած և լուծած գեղարվեստական խնդիրները շատ բանով կանխորոշել են կերպարվեստի հետագա պատմական շրջանին բնորոշ որոնումների ուղղվածությունը։

Պատկերազարդումը տես 224-րդ էջից հետո՝ ներդիրում։

*Գրկ.* Эдуард Мане. Жизнь. Письма. Воспоминания. Критика современников, [пер. с франц.], М., 1965.

**ՄԱՆԵԵՎ** Իվան [Հովհաննես (1763—1790, Իզմայիլ)], ռուսական բանակի հայազգի զինվորական, գնդապետ (1790)։ Ծնվել է առևտրականի ընտանիքում։ Ընդհանուր և ռազմ. կրթությունն ստացել է Պետերբուրգում։ 1780-ից ծառայել է Ռուս. կայսրության հվ. սահմանամերձ շրջանները պաշտպանող զորքերի կազմում։ 1787—1791-ի ռուս-թուրք. պատերազմի ժամանակ եղել է գումարտակի, ապա՝ գնդի հրամանատար, մասնակցել Սև ծովի Կինբուռնի ցամաքաշերտի կարևոր ամրոցի պաշտպանությանը և 1787-ի հոկտ. 1—2-ի արյունահեղ ճակատամարտին, որտեղ գլխովին ջախջախվեց թուրք. 6-հազարանոց դեսանտը։ Մասնակցել է Ֆոկշանի (1789-ի հուլիս), Ռիմնիկի—Գալացի (1789-ի սեպտեմբեր) ճակատամարտերին։ Մարտերում դրսևորած քաջության համար պարգևատրվել է շքանշաններով։ Զոհվել է Իզմայիլի գրավման ժամանակ (1890-ի սեպտեմբեր) և թաղված է քաղաքի եղբայրական գերեզմանոցում։

*Գրկ.* Собрание актов, относящихся к обозрению истории армянского народа, ч. 3, М., 1838; Письма и бумаги А. В. Суворова, т. 1, СПБ, 1916; А. В. Суворов. [Документы], т. 2, М., 1951; Нерсисян М., Из истории русско-армянских отношений, кн. 1, Е., 1956. *Հ. Խաչատրյան*

**ՄԱՆԵԹՈՆ**, Մանեթոս (մ. թ. ա. IV դ. 2-րդ կես —III դ. սկիզբ), հին եգիպտացի պատմիչ, քրմապետ Հելիոպոլսում։ Գրել է «Եգիպտոսի պատմությունը» (հուն.), որից պատառիկներ են պահպանվել Հովսեպոս Փլավիոսի, Հուլիոս Աֆրիկանոսի և Եվսեբիոս Կեսարացու երկերում։ Մ. Եգիպտոսի պատմությունը բաժանել է 30 դինաստիայի և Հին, Միջին, Նոր թագավորությունների ժամանակաշրջանների (որոշ ճշտումներով ընդունված է նաև ժամանակակից գիտության մեջ)։ Սովետական պատմաբան Վ. Ստրուվեն ապացուցել է, որ Մ. օգտագործել է հուսալի սկզբնաղբյուրներ. նրա բերած փաստերի մեծամասնությունը ճշգրիտ է։

*Գրկ.* Струве В. В., Манефон и его время, «Записки коллегии востоковедов», Л., 1928, т. 3, в. 1, 1930, т. 4.

**ՄԱՆԵԿ**, պարուրակային միացման կամ պտուտակային փոխանցման դետալ, որն ունի պարուրակով անցք։ Հեղույսի կամ գամասեղի վրա հագցված ամրակման Մ-ները կազմում են հեղույսային միացում։ Ըստ ձևի լինում են վեցանիստ, կլոր, պսակաձև, թևավոր և այլ Մ-ներ, որոնք աշխատում են ուժային կամ ընթացքային պտուտակի հետ զույգում։ Հանգույցի կոնստրուկցիային համապատասխան Մ-ները



Ամրակման մանեկներ. *1.* վեցանիստ, *2.* կլոր, դարձակի համար անցքերով, *3.* պսակավոր, *4.* ունկերով

պատրաստվում են տարբեր ձևերի ու չափերի։ Որոշ դեպքերում կիրառում են 2 մասից բաղկացած երկատվող Մ-ներ։

**ՄԱՆԵԿԱԴԱՐՁԻՉ**, էլեկտրական կամ պնևմատիկ հաղորդակով ձեռքի մեքենա. ծառայում է մանեկների, պտուտակների և ամրակման այլ դետալների ամրացման և քանդման համար։ Տարբերում են հիմնականում միա- և երկկողմանի հասարակ, բացովի, ճծակավոր, գլխանիստավոր, սահմանային և այլ Մ-ներ։ Լայն կիրառում են գտել արդյունաբերության ավիացիոն, ավտոմոբիլային և այլ ճյուղերում։

**ՄԱՆԵԿԱԿՏՐԻՉ ՀԱՍՏՈՑ**, երկարացված կոնստրուկցիայի հատուկ մեքենայական ներպարուրակիչներով (տես *Պարուրակամշակման գործիքներ*) մանեկների պարուրակահանման մետաղահատ հաստոց։ Տարբերում են միա- և բազմաիլ, ավտոմատ, կիսաավտոմատ և ոչ ավտոմատ (հիմնականում միաիլ) ցիկլով աշխատող Մ. հ-ներ։ Մշակված մանեկները հագցնում են ներպարուրակիչի վրա, և երբ ձողը լրացվում է, իլը ձեռքով հանում են ու ազատում մանեկներից։ Այդպիսի հաստոցների վրա պարուրակահանվող մանեկների տրամագիծը 1,5-ից 20 *մմ* է։ Կիսաավտոմատ և ավտոմատ ցիկլով աշխատող Մ. հ-ները լինում են 2-, 4-, 6- և 8-իլանի։



Ծռված պոչամասով ներպարուրակիչով մանեկների պարուրակահանման սխեմա. *1.* հրիչ, *2.* նախապատրաստուկ, *3.* ներպարուրակիչ, *4.* իլ, *5.* հատուկ գլխիկ

Առավել տարածված են 90°-ով ծռված պոչամասով, պտտվող ներպարուրակիչով հորիզոնական կամ թեք միաիլ կամ երկիլ ավտոմատ Մ. հ-ներ։ *Ա. Ճենտերեճյան*

**ՄԱՆԵՍ** (Mánes), չեխ նկարիչների ընտանիք։ Անտոնին Մ. (1784—1843), բնանկարիչ, գեղանկարչության ազգային դպրոցի հիմնադիրներից։ 1800-ական թթ. սկզբին սովորել է Պրագայի Գեղարվեստի ակադեմիայում, որտեղ դասավանդել է 1836-ից։ Կրել է *կլասիցիզմի* և *ռոմանտիզմի* ազդեցությունը։ Գործերից է՝ «Գրադչանիի տեսարանը» (1821, Քաղաքային թանգարան, Պրագա)։ Որդին՝ Յոսեֆ Մ. (1820—1871), 1835—45-ին սովորել է Պրագայի, 1843—48-ին՝ Մյունխենի Գեղարվեստի ակադեմիաներում։ Սկզբնական շրջանում կրել է *նազովրեցիների* ազդեցությունը։ Մասնակցել է 1848-ի Պրագայի ապստամբությանը։ Ստեղծել է դիմանկարներ, բնանկարներ, նկարազարդել գրքեր. նշանավոր է Պրագայի ռատուշայի ժամացույցի թվատախտակի չեխ գյուղացու հերոսականացված, մոնումենտալ պատկերը (յուղաներկ, 1864—66, այժմ՝ Քաղաքային թանգարանում)։ Նրա եղբայրը՝ Կվիդո Մ. (1828—1880), 1838—1851-ին սովորել է Պրագայի Գեղարվեստի ակադեմիայում, 1868—70-ին՝ Դյուսելդորֆում։ Ստեղծել է քաղաքացիների կենցաղը և երեխաների կյանքը պատկերող նկարներ։


Յո. Մանես. «Հունիս: Հունձ», «Օռլոյ» շարքի մեդալիոն (1865—66, Քաղաքի թանգարան, Պրագա)

**ՄԱՆԵՍ**, Ալավերդի քաղաքի նախկին (մինչև 1939-ը) անվանումը։ Տես *Ալավերդի*։

**ՄԱՆԵՐԻԶՄ** (< իտալ. manierismo, < maniera — մաներա, ոճ, եղանակ), ուղղություն XVI դարի եվրոպական արվեստում, որն արտացոլում է Բարձր *Վերածննդի* հումանիստական մշակույթի ճգնաժամը։ Մ-ի գեղագիտական հիմնական չափանիշ է դարձել ոչ թե բնությանը հետևելը, այլ արվեստագետի ներաշխարհում ծնված գեղարվեստական կերպարի սուբյեկտիվ «ներքին գաղափարը»։ Ոճական ելակետ ընդունելով Միքելանջելոյի, Ռաֆայելի և Վերածննդի այլ վարպետների ստեղծագործությունները՝ մաներիստները խեղաթյուրում էին դրանց հիմքում ընկած ներդաշնակության սկզբունքները, արմատավորում աշխարհի վաղանցիկության և իռացիոնալ ուժերին հլու մարդկային ճակատագրի երերունության մասին պատկերացումները։ Մ-ի արվեստում վերածնվել են միջնադարյան պալատական-ասպետական մշակույթի առանձին գծեր։ Մ. ցայտուն կերպով է դրսևորվել իտալ. արվեստում։ Վաղ շրջանի մաներիստների (Պոնտորմո, Ռոսսո, Ֆիորենտինո, Պարմիջանինո) երկերին բնորոշ են ողբերգա-

կանությունն ու միստիկական հուզավառությունը, գունային ու լուսաստվերային հակադրությունները, դիրքերի ու մոտիվների ընդգծված արտահայտչականությունը, ֆիգուրների համամասնությունների ձգվածությունը, վիրտուոզ, ինքնաբավ գծանկարը: Մաներիստական դիմանկարում (Բրոնզինո և ուրիշներ), որը այդ ժանրի զարգացման նոր ուղիներ է հայտնաբերել, կերպարների ազնվականական ներփակվածությունը զուգորդվել է բնորդի նկատմամբ արվեստագետի սուբյեկտիվ-հուզական վերաբերմունքին: 1540-ական թթ. պալատական արվեստում Մ. դարձել է իշխող ուղղություն. այդ շրջանի գեղանկարչությունը աչքի է ընկնում սառը, «ակադեմիական» պաշտոնականությամբ (Ջ. Վազարի, Ջ. Պ. Լոմացցո): Մ-ի քանդակագործությանը (Բ. Ամմանատի, Բ. Չելլինի) բնորոշ են մարմնաձևերի ոճավորումը, ծավալների մանրատվածությունը, ինչպես և բացարձակ կլոր քանդակի պրոբլեմների համարձակ լուծումը: Մ-ի ճարտ-յան մեջ (Բ. Ամմանատի, Ջ. Վազարի, Պ. Լիգորիո, Ջուլիո Ռոմանո) կերպարի հումանիստական պարզությունը իր տեղը զիջել է թատերական էֆեկտներին, հարդարանքի պաճուճավորմանը: Մ-ի իտալ. վարպետների գործունեությունը երկրի սահմաններից դուրս նպաստել է այդ ուղղության համաեվրոպական դառնալուն: *Բոլոնիայի դպրոցի* ակադեմիստների և *Կարավաջոյի* հանդես գալով Մ. անկում է ապրել՝ իր տեղը զիջելով *բարոկկոյին*: Ժամանակակից արևմտյան արվեստաբանության մեջ «Մ.» անհիմն կերպով տարածվում է նաև իրենց ուրույն ճանապարհով ընթացած կամ մասամբ ազդված վարպետների (Տինտորետտո, Էլ Գրեկո, Լ. Լոտտո, Պ. Բրեյգել Ավագ) վրա:

*Գրկ.* Виппер Б. Р., Борьба течений в итальянском искусстве XVI века..., М., 1956.

**ՄԱՆԵՐՀԱՅՄ** (Mannerheim) Կարլ Գուստավ Էմիլ (1867—1951), բարոն, ֆիննական պետական և ռազմական գործիչ, մարշալ (1933): Մինչև 1917-ը ծառայել է ռուս. բանակում: 1914—18-ի առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ եղել է միավորման հրամանատար: 1918—19-ին Ֆինլանդիայի ռեգենտն էր, 1939-ից՝ ֆին. բանակի գլխավոր հրամանատարը, Պետ. պաշտպանության խորհրդի նախագահը (1931-ից): 1939—40-ին, սովետա-ֆինլանդական պատերազմի ժամանակ, և 1941—44-ին, որպես ֆաշիստական Գերմանիայի դաշնակից, ղեկավարել է ֆին. բանակի գործողությունները: 1944-ին հարկադրված որոշում է ընդունել՝ երկիրը դուրս բերել Բեռլինի ագրեսիվ պակտից և պատերազմից՝ սովետական կառավարության առաջադրած պայմաններով: 1944-ի օգոստոսից Ֆինլանդիայի պրեզիդենտն էր, 1946-ի մարտին, դեմոկրատական ուժերի ճնշման տակ, հեռացել է պաշտոնից:

**«ՄԱՆԵՐՀԱՅՄԻ ԳԻԾ»**, նախկին ֆիննական սահմանային ամրությունների համակարգ Կարելյան պարանոցում: «Մ. գ.» է կոչվել ֆին. մարշալ Կ. *Մաներհայմի* անունով: Կառուցվել է 1927—39-ին: Շինարարությունն ավարտվել է բելգ. գեն. Բադուի (մասնակցել է «Մաժինոյի գծի» կառուցմանը) ղեկավարությամբ: «Մ. գ.» ճակատի գծով ուներ 135 *կմ* լայնություն և 95 *կմ* խորություն: Սովետա-ֆինլանդական պատերազմի (1939—40) ժամանակ սովետական զորքերը ճեղքեցին «Մ. գ.»: Երկրորդ համաշխարհային պատերազմի (1939—45) ժամանակ ֆին. զորքերը մասամբ վերականգնեցին «Մ. գ.»-ի ամրությունները, սակայն 1944-ին սովետական զորքերը երկրորդ անգամ ճեղքեցին այն (Վիբորգյան ուղղությամբ) և այնուհետև հիմնովին ոչնչացրին նրա պաշտպանական կառույցները:

*Գրկ.* Карбышев Д. М., Линия Маннергейма, в его кн.: Избр. научные труды,, М., 1962.

**ՄԱՆՋԵԼԵՐ**, գյուղ Տրապիզոնի վիլայեթում, Տրապիզոն քաղաքից մոտ 12 *կմ* հեռավորության վրա: 1915-ին ուներ 10 տուն հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Կար եկեղեցի և դպրոց: 1895-ի հայկ. կոտորածների ժամանակ գյուղը հիմնովին թալանվել է, տների մեծ մասը հրկիզվել: Բնակիչների որոշ մասը ստիպված հեռացել է Ռուսաստան (Սուխումի, Սոչի): Մնացած բնակչությունը 1915-ին բռնի տեղահանվել և բնաջնջվել է: *Բ. Թոռլաքյան*

**«ՄԱՆԶՈՒՄԷԻ ԷՖՔԵԱՐ»** (բառացի՝ «Կարծիքների շարք»), հայատառ թուրքերեն և հայերեն օրաթերթ, շաբաթաթերթ: Լույս է տեսել 1866—1917-ին (երկու շրջանով), Կ. Պոլսում: Խմբագիրներ՝ Կ. Փանոսյան, Մ. Գոչունյան (Քասիմ) և ուրիշներ: Սկզբում ունեցել է չափավոր ուղղություն: Այնուհետև, ռուս-թուրքական պատերազմի տարիներին, ընդունել է համարձակ դիրքորոշում, քննադատել թուրք. կառավարության ազգային քաղաքականությունը, պաշտպանել հայ ժողովրդի դատը: Լուսաբանել է գավառների տնտ., քաղ. և




մշակութային կյանքը, ներկայացրել թուրք պաշտոնյաների կեղեքումներն ու հարըստահարումները: 1880-ական թթ. գրաքննության խստացման հետևանքով թերթը կրկին չափավոր դիրք է գրավել: Երկրորդ շրջանում (1896-ից), պահպանելով անվանումը, թերթը հիմնականում լույս է տեսել հայերեն, վերածվել գլխավորապես գրական-մշակութային պարբերականի: Այս շրջանում աշխատակցել են Թեոդիկը, Ա. Անտոնյանը, Ե. Թոլայանը և ուրիշներ: «Մ. է.»-ում տպագրվել են վեպեր, վիպակներ, պատմվածքներ, չափածո գործեր, բանասիրական հոդվածներ: *Գ. Ստեփանյան*

**ՄԱՆԹԱՇ** (ստորին հոսանքում՝ Քառանգու), գետ Հայկական ՍՍՀ Արթիկի և Ախուրյանի շրջանում, Ախուրյանի ձախ վտակը: Երկարությունը 55 *կմ* է, ավազանը՝ 1020 $կմ^2$: Սկիզբ է առնում Արագած լեռնազանգվածի արմ. մասից, 3150 *մ* բարձրությունից: Վերին մասում հոսում է տրոգային հովտով, ապա խոր, V-անման ձորով դեպի հս-արմ. ու արմ.: Գետը գյուղի մոտ թափվում է Ախուրյանի մեջ: Ունի խառը սնում: Հորդանում է մայիս-հունիսին: Տարեկան միջին ծախսը 1,27 $մ^3/վրկ$ է, հոսքը՝ 40 մլն $մ^3$: Գետի վրա (վերին հոսանքում) կառուցվել է Մ-ի ջրամբարը:

**ՄԱՆԹԱՇԻ ՋՐԱՄԲԱՐ**, գտնվում է Հայկական ՍՍՀ Արթիկի շրջանում, շրջկենտրոնից մոտ 14 *կմ* հեռավորության վրա, Արագածի հս-արմ. լանջին: Շահագործման է հանձնվել 1967-ին: Երկարությունը 2,8 *կմ* է, խորությունը՝ 25 *մ*: Պատնեշը հողային է, ունի 29 *մ* բարձրություն, 400 *մ* երկարություն, կատարային մասում՝ 4,5 *մ* լայնություն: Ոռոգում է 3780 *հա* հողատարածություն: Սնումը խառն է: Ընդհանուր ծավալը 8,2 մլն $մ^3$ է, օգտակարը՝ 7,9 մլն $մ^3$, հայելու մակերեսը՝ 76,4 *հա*: Տարեկան բաց է թողնում 25 մլն $մ^3$ ջուր, որից 12 մլն $մ^3$ օգտագործվում է ոռոգման, իսկ 13 մլն $մ^3$՝ Արթիկ քաղաքի և շրջանի բնակավայրերի ջրամատակարարման համար: *Հ. Թադևոսյան*

**ՄԱՆԹԱՇՅԱՆ** Ադոլֆ Հայրապետի (ծն. 16. 3.1932, Երևան), հայ սովետական քիմիկոս: Քիմ. գիտ. դ-ր (1974), պրոֆեսոր (1976): Ավարտել է Երևանի պոլիտեխնիկական ինստ. (1956): 1962-ից աշխատել է ՀՍՍՀ ԳԱ քիմ. ֆիզիկայի լաբորատորիայում (1975-ից՝ ինստ.) որպես գիտական քարտուղար, 1975—77-ին՝ դիրեկտորի տեղակալ գիտության գծով և 1977-ից՝ ածխաջրածինների օքսիդացման լաբորատորիայի վարիչ: Գիտ. աշխատանքները նվիրված են շղթայական ռեակցիաների, մասնավորապես ածխաջրածինների օքսիդացման մեխանիզմների ուսումնասիրությանը: Մ. մշակել է (Ա. *Նալբանդյանի* հետ) ռադիկալների սառեցման կինետիկ մեթոդ. ածխաջրածինների գազաֆազային օքսիդացման պրոցեսներում հայտնաբերել գլխավոր ակտիվ կենտրոնները՝ ալկիլ, պերօքսիդային և ալկօքսի ռադիկալները: Ածխաջրածինների օքսիդացման և սառը բոցերի նրա հետազոտությունները կարևոր են այլասեռված շղթայական ռեակցիաների տեսության զարգացման համար: Արժանացել է (Ա. Նալբանդյանի հետ) ՀՍՍՀ պետ. մրցանակի (1976):

*Երկ.* Элементарные процессы в медленных газофазных реакциях, Е., 1975 (հեղինակակից՝ Налбандян А. Б.).

**ՄԱՆԹԱՇՅԱՆՆԵՐ**, Մանթաշևներ, Մանթաշովներ, խոշոր նավթարդյունաբերողներ Անդրկովկասում, XIX դ. վերջին և XX դ. սկզբին: Թավրիզցի, ապա թիֆլիսաբնակ հայ առևտրական Հովհաննեսի որդի Ալեքսանդրը (1849—1911) հոր մահից (1878) հետո Բաքվում զբաղվել է նավթարդյունաբերությամբ: Դարձել է «Թիֆլիսի առևտրական բանկ»-ի (մասնաճյուղեր է ունեցել Բաքվում և Բաթումում) գլխավոր բաժնետերը, 1899-ին՝ հիմնել «Ա. Մանթաշյանց և ընկ. առևտրական տուն» բաժնետիրական ընկերությունը (կապիտալը 1899-ին՝ 22 մլն, 1914-ին՝ 30 մլն ռ.): Ռուս. կառավարության հովանավորությամբ օտարերկրյա ընկերությունների հետ կատարել է մի շարք առևտրա-ֆինանսական գործարքներ և դարձել Ռուսաստանի մեծահարուստներից մեկը:

Նրա ընկերությունը մասնաճյուղեր է ունեցել Ռուսաստանի, Լեհաստանի, Թուրքիայի, Ռումինիայի, Անգլիայի, Ֆրանսիայի, Եգիպտոսի, Իրանի, Հնդկաստանի տարբեր քաղաքներում: Ունեցել է բազմաթիվ շոգենավեր, կալվածքներ, տներ: Բավականին գումարներ է ծախսել բարեգործական նպատակներով (Թիֆլիսում հիմնել է «Մանթաշյան առևտրական դպրոցը», կառուցել Ներսիսյան դպրոցի նոր շենքը, վերանորոգել Մայր եկեղեցին ևն): 1894-ին նվիրատվություն է կատարել *Կովկասի հայոց բարեգործական ընկերությանը* և ընտրվել նրա Կենտրոնական խորհրդի փոխնախագահ: Ալեքսանդրի մահից հետո որդիները (Հովհաննես, Լևոն, Հովսեփ, Գեորգ) «Ա. Մանթաշյանց և ընկ. առևտրական տան» բաժնետոմսերի մի մասը վաճառել են Պետերբուրգի ռուս. բանկերին, և 1913-ին ընկերության վարչությունը Բաքվից (մինչև 1911-ի վերջը Թիֆլիսում էր) տեղափոխվել է Պետերբուրգ: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո Մ. վտարանդվել են: Մ-ին հաջողվել է անգլոհոլանդ. «Ռոյալ դատչ-Շելլ» տրեստին 10 տարի ժամկետով վաճառել սովետական կառավարության ձեռքերով ազգայնացված իրենց նախկին նավթահանքերի շահագործման իրավունքը: Հետագայում պայմանագիրը չեղյալ է հայտարարվել, և Մ. հեռացել են «գործարար աշխարհից»:

**ՄԱՆԻ**, հայկական հեթանոսական տոմարի ամիսների 16-րդ օրվա անունը:

**ՄԱՆԻ**, Մանիքեոս (հուն. Μάνης, Μάνητος, Μανιχαῖοι, Μάνου, լատ. Manes, Manichaeus, 216/217—276), *մանիքեության* հիմնադիրը: Ծնվել է Տիզբոնում, պահլավական մեծատոհմիկ ընտանիքում: Մ-ի հայրը՝ Պաթակ Պապակը, եղել է Եկբատանա քաղաքի մեծահարուստ, մայրը՝ Պարթև Արշակունիների ազգակից, Կամսարական տոհմից: Սասանյանների գահակալումից հետո Մ-ի ընտանիքը տեղափոխվել է Տիզբոն, որտեղ Մ. կրթվել է մաքրակրոն մագդասիլաենների մկրտարաններում: Նա իր վարդապետությունը բացահայտ սկսել է քարոզել 242-ից: Սկզբում հաջողություն չգտնելով՝ հեռացել է Պարսկաստանից՝ քարոզիչներ ուղարկելով Արևելքի տարբեր երկրներ: Կարճ ժամանակամիջոցում մանիքեական համայնքներ են ստեղծվել Պարսկաստանում, Հայաստանում, Միջին Ասիայում, Հնդկաստանում, Չինաստանում և այլուր: Մտերմիկ հարաբերություններ է հաստատել Շապուհ I Սասանյան թագավորի եղբայր Պերոզի հետ, որի ջանքերով ստացել է իր գաղափարները քարոզելու ազատություն: Սակայն մոգերի պահանջով Մ. կրկին հալածվել է, ձերբակալվել և մորթազերծվել Խուժաստանի Գունդ-ի Շապուհ քաղաքում՝ Բահրամ I արքայի հրամանով: Մ-ի գաղափարները շարադրվել են «Գաղտնիքների գիրք», «Պատվիրանների գիրք ունկնդիրների համար», «Կենդանացուցիչ գիրք» և այլ երկերում: Մ-ի ուսմունքը զգալի տարածում է ունեցել Հայաստանում, հետագայում որոշակի ազդեցություն գործել հատկապես պավլիկյան և թոնդրակյան աղանդների վրա:

*Գրկ.* Տեր-Մինասյան Ե. Գ., Միջնադարյան աղանդների ծագման և զարգացման պատմությունից, Ե., 1968:

**ՄԱՆԻԱԿԱԼ-ԴԵՊՐԵՍԻՎ ՊՍԻԽՈԶ**, ցիկլոֆրենիա, ցիրկուլյար պսիխոզ, հոգեկան հիվանդություն, որը բնորոշվում է պարբերաբար ընթացող տրամադրության խանգարումներով: Նկարագրել է գերմանացի հոգեբույժ Է. Կրեպելինը: Հիվանդության առաջացմանը նպաստում են ժառանգական նախատրամադրվածությունը, հիվանդի կոնստիտուցիան (առավել հաճախ տառապում են պիկնիկ և ցիկլոիդ խառնվածքի անձնավորությունները): Կարևոր նշանակություն ունեն նաև ներզատական գործոնը (կանանց մոտ հիվանդությունը մեծ մասամբ կապված է հղիության, ծննդաբերության, դաշտանի հետ) և տարվա եղանակը (գարուն, աշուն): Հիվանդությունը սովորաբար առաջանում է 15—30 տարեկանում, երբեմն՝ 40-ից հետո: Բնորոշ է պարբերականությունը և ընթանում է 1—2-ից մինչև 5—6 ամիս տևող՝ մանիակալ կամ դեպրեսիվ փուլերով, որոնց հաջորդականությունն օրինաչափ չէ: Հետագայում փուլերն ավելի ծանր են ընթանում և դառնում երկարատև: Երիտասարդ տարիքում գերակշռում է մանիակալ, իսկ մեծահասակների մոտ՝ դեպրեսիվ խանգարումները: Միջփուլային (լուսավոր) շրջանում հիվանդները դառնում են հոգեպես լրիվ առողջ, որը կարող է տևել մի քանի օրից մինչև մի քանի տարի: Հիվանդությունն սկսվում է կարճատև նախանշաններով, որից հետո տրամադրության խանգարումները (մանիակալ կամ դեպրեսիվ) հարաճում են և ընթանում մտածողության պրոցեսների արագացմամբ ու հոգեշարժական գրգռվածությամբ: Մանիակալ փուլը բնորոշվում է տրամադրության բարձրացմամբ, լավզգացողությամբ (էյֆորիա), արտասովոր թարմության, առույգության և ուժեղ լինելու զգացումով: Ողջ շրջապատը հիվանդն ընկալում է վառ գույներով: Շփման մեջ է մտնում բոլորի հետ, հաշվի չի առնում ուրիշների տրամադրությունը և ամեն ինչ անում է իր ցանկությամբ: Մտածողության պրոցեսներն արագանում են. հիվանդը խոսում է անընդհատ, արագ, մի թեմայից անցնում մյուսին (թեմատիկ շեղում, մտքերի թռիչք): Արտահայտում է անձի գերագնահատման, մեծամոլական մտքեր: Խոսակցական գրգռվածությունն ուղեկցվում է ժեստերով, միմիկայի շարժումներով: Ուշադրությունը խիստ լարված է, անկայուն, հակումները (հատկապես սննդի և սեռական) ուժեղացած են: Մեծահասակների մոտ մանիակալ վիճակի կլինիկական պատկերը կարող է փոխվել՝ հաճախ ուղեկցվելով զայրույթով, չարությամբ, բծախնդրությամբ (զայրույթի մանիա): Դեպրեսիվ փուլը բնորոշվում է տրամադրության անկմամբ: Հիվանդի դեմքն արտահայտում է թախիծ ու վիշտ: Հակառակ մանիակալ փուլին, այստեղ շրջապատն ընկալվում է մռայլ գույներով: Հաճախ նկատվում է հարազատներին սիրելու ունակության կորուստ, որը մեծ վիշտ է պատճառում հիվանդին: Ունենում է ինքնամեղադրման, ինքնանվաստացման զառանցական մտքեր, որոնք կարող են հասցնել ինքնասպանության մտքերի ու գործողությունների: Նկատվում է նաև ասոցիացիաների արգելակում. հիվանդը խոսում է ցածրաձայն, դանդաղ, դժվարությամբ, դառնում է ինքնամփոփ, զառանցական մտքերի մեջ խորասուզված: Առաջանում է նաև հոգեշարժական արգելակում, որը կարող է հանգեցնել կաշկանդվածության (տես *Կատատոնիա*): Դեպրեսիան կարող է ուղեկցվել նաև շարժողական անհանգստությամբ, վախի և տագնապի երևույթներով (թախծի բռնկում կամ գրգռված մելանխոլիա): Նման վիճակներում հիվանդը կարող է կատարել ինքնավնասումներ և ինքնասպանություն: Դեպրեսիան ավելի արտահայտված է լինում առավոտյան ժամերին: Մ-դ. պ-ի ինչպես մանիակալ, այնպես էլ դեպրեսիվ փուլերին բնորոշ են մարմնա-վեգետատիվ մի շարք ախտանշաններ (քաշի անկում, փորկապություն, բերանի չորություն, պուլսի հաճախացում, բբերի լայնացում, արյան ճնշման բարձրացում, կանանց մոտ՝ դաշտանային ցիկլի խանգարումներ ևն): Գոյություն ունեն նաև Մ-դ. պ-ի խառը և ատիպիկ ձևեր: Խառը ձևերի դեպքում մանիակալ և դեպրեսիվ ախտանշանները միահյուսվում են, արտահայտվելով չարության մանիայի, մանիակալ ստուպորի, գրգռված մելանխոլիայի կլինիկական պատկերներով: Ատիպիկ ձևերից է *ցիկլոթիմիան*:

Բուժումը. հիմնականում պայմանավորված է պսիխոտիկ նոպաների (փուլերի) բնույթով և արտահայտվածության աստիճանով. մանիակալ փուլի դեպքում նշանակվում է պսիխոտրոպ դեղամիջոցներ (ամինազին, ստելազին, հալոպերիդոլ): Դեպրեսիվ փուլի դեպքում լավ արդյունքներ են ստացվում անտիդեպրեսանտների (մելիպրամին, տոֆրանիլ, ամիտրիպտիլին) կիրառումից: Գրգռված մելանխոլիայի դեպքում ամիտրիպտիլինը պետք է զուգորդել տիզերցինի (նոզինան) հետ: Ինչպես մանիակալ, այնպես էլ դեպրեսիվ վիճակների դեպքում արդյունավետ դեղամիջոց է համարվում ածխաթթվային լիթիումը: Դեպրեսիվ վիճակների դեպքում կարևոր է ինքնասպանության փորձերի կանխումը: *Վ. Հովհաննիսյան*

**ՄԱՆԻԶԵՐ** Մատվեյ Գենրիխովիչ [5(17).3. 1891, Պետերբուրգ—20.12.1966, Մոսկվա], ռուս սովետական քանդակագործ: ՍՍՀՄ ժող. նկարիչ (1958): ՍՄԿԿ անդամ 1941-ից: 1911—16-ին սովորել է Պետերբուրգի Գեղարվեստի ակադեմիայում: Մասնակցել է *մոնումենտալ պրոպագանդայի* իրագործմանը («Բանվորը», բարձրաքանդակ, ցեմենտ, 1920—21, Մոսկվա): ԱԽՌՌ-ի անդամ էր (1926-ից): Դասավանդել է Լենինգրադի Գեղարվեստի ակադեմիայում (1921—29, 1935—41, 1945—47), Մոսկվայի կիրառական և դեկորատիվ արվեստի ինստ-ում (1946—52) և Գեղարվեստի ինստ-ում (1952-ից): 1947-ից՝ ՍՍՀՄ Գեղարվեստի ակադեմիայի փոխպրեզիդենտ: Ստեղծագործել է հիմնականում մոնումենտալ քանդակագործության բնագավառում: Աշխատանքներից են. Լենինգրադում՝ Վ. Վոլոդարսկու (1925) և «1905 թվականի հունվարի 9-ի զոհերի» (1931),



Մ. Գ. Մանիզեր. Ջութակահար Հ. Ա. Նալբանդյանի դիմաքանդակը, գիպս (1920, Հայաստանի պետական պատկերասրահ, Երևան)

Կույբիշևում՝ Վ. Ի. Լենինի (1925), Վ. Ի. Չապաևի (1932) և Վ. Վ. Կույբիշևի (1938), Խարկովում և Կիևում՝ Տ. Գ. Շևչենկոյի (1935 և 1938), Ուլյանովսկում՝ Վ. Ի. Լենինի (1940, ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1941), Ռյազանում՝ Ի. Պ. Պավլովի (1949, ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1950) հուշարձանները, Զոյա Կոսմոդեմյանսկայայի արձանը (1942, բրոնզ, Տրետյակովյան պատկերասրահ, Մոսկվա, ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1943), Մոսկվայի մետրոպոլիտենի մի շարք բրոնզյա արձաններ ու խմբաքանդակներ (1936—39), ինչպես և բազմաթիվ դիմաքանդակներ: Մ-ի գործերից ջութակահար Հ. Ա. Նալբանդյանի դիմաքանդակը (գիպս, 1920) գտնվում է Հայաստանի պետ. պատկերասրահում:

**ՄԱՆԻԹՈԲԱ** (Manitoba), նահանգ Կանադայում: Տարածությունը 650,1 հզ. $կմ^2$ է, բնակչությունը՝ 1021 հզ. (1978): Վարչական կենտրոնը՝ Վիննիպեգ: Ունի զարգացած արդյունաբերություն, որի հիմքը գյուղատնտ. արտադրանքի մշակումն է, ինչպես նաև հանքային և անտառային հարստությունների արդյունահանումը: Մ. տալիս է Կանադայի վարսակի բերքի 20%-ը, գարու՝ 15%-ը, ցորենի՝ 10%-ը: Մ-ին բաժին է ընկնում Կանադայում արդյունահանվող նիկելի մոտ 1/4-ը, մսի պահածոների արտադրության 1/5-ը: Տրանսպորտային, արդ. և առևտրական խոշոր կենտրոնը Վիննիպեգն է:

**ՄԱՆԻԼԱ** (Manila), Ֆիլիպինների փաստական մայրաքաղաքը, տնտեսական, քաղաքական և մշակութային կենտրոնը:



Մանիլայի գործարար կենտրոնը

Գտնվում է Լուսոն կղզում, Պասիգի գետաբերանի մոտ: Առևտրա-տրանսպորտային հանգույց է, նավահանգիստ, ունի օդանավակայան: Տարածությունը 832 $կմ^2$ է, բնակչությունը՝ 6 մլն (արվարձաններով, 1979): Մ-ում է կենտրոնացած երկրի արդ. ձեռնարկությունների 2/3-ը՝ կարի, կոշիկի, պոլիգրաֆ, սննդի, փայտամշակման արդյունաբերության ճյուղերը, տեքստիլ, քիմ., մետաղամշակման ձեռնարկությունները: Կա տնայնագործական արտադրություն:

Գործում են Մանիլայի, կաթոլիկական Սանտո Թոմասի, Հեռավորարևելյան, Ֆիլիպինյան իգական համալսարանները և այլ բուհեր, Ազգային գրադարանը, Ազգային և Սանտո Թոմաս (ազգագրական, բանամիրական հավաքածուների պատկերասրահ) թանգարանները: Կառուցվել է Մայնիլա և Տոնդո բնակավայրերի տեղում՝ 1571-ին: Պահպանվել են XVI—XVIII դդ. հուշարձաններ:

**ՄԱՆԻԼԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԵՎՏՈՒՐ,** XVI—XVIII դարերում հայ վաճառականների մասնակցությունը Մանիլայի միջազգային առևտրին: XVII—XVIII դդ. իսպանական կաթոլիկական օրդենները Ֆիլիպիններում դառնում են հիմնական քաղ. և տնտ. ուժը: Նրանք իրենց ձեռքում կենտրոնացնում են հսկայական կալվածքներ, և գաղութային տերությունների դեմ պայքարելու նպատակով սահմանափակում են Ֆիլիպինների կապերը արտաքին աշխարհի հետ: Մյուս գաղութային տերությունները իրենց հերթին արգելում են իսպանացիների մուտքը ոչ իսպանական գաղութները: Այս պայմաններում Ֆիլիպիններ մուտք ունեին միայն չինացի, հնդիկ և հայ առևտրականները, Մանիլայի ու Ակապուլկոյի (Մեքսիկա) միջև թույլատրվում էր առևտրական նավերի տարեկան երկու ուղերթ: Այդ շրջանում արծաթը, ոսկու հետ համահավասար, դառնում է փոխանակման համարժեք, որը նոր աշխարհի իսպանական գաղութներից Եվրոպա էր արտահանվում հիմնականում Մանիլայի միջոցով, և Արևելքի երկրների հետ առևտուրը ուղղակի կախվածության մեջ էր արծաթի առկայությունից: Այդ պատճառով արծաթը եվրոպական գաղութային տերությունների ուշադրության կենտրոնում էր և դարձել էր հիմնական գործոն Իսպանիայի և այդ տերությունների փոխհարաբերություններում:

Այս պայմաններում հայ առևտրականները, որոնք չունենալով պետականություն, չէին կարող գաղութային քաղաքականության ոլորտում մրցակից լինել, ստանում են համեմատաբար արտոնյալ պայմաններ: Արդեն XII դ. Կանտոնում ունենալով առևտրական գաղութ, սկսում են անմիջականորեն մասնակցել մանիլյան առևտրին, չին. մետաքսը Կանտոնից և Մակաոյից տեղափոխել Մանիլա, իսկ այստեղից ամերիկյան արծաթը՝ Հնդկաստան: XVII դ. հայ առևտրականների դերը մանիլյան առևտրում ավելի է աճում, որովհետև մրցակցության հետևանքով իսպանական առևտրական նավերի ուղերթները չափազանց կրճատվում են, իսկ 1640-ից ընդհանրապես դադարեցվում: Աճող հակասությունները հանգեցնում են երկարատև պատերազմների, և եվրոպական տերությունների դերը մանիլյան առևտրում խիստ սահմանափակվում է: Մանիլա մուտք են գործում միայն հնդիկ մահմեդական և հայ առևտրականները: Արդյունքը լինում է այն, որ առևտրի գերակշռող մասը մնում է հայ առևտրականների տնօրինության տակ: Եվրոպական առևտրականները ստիպված դիմում են վերջիններիս ծառայությանը: Սովորաբար հայերը Ֆիլիպիններ նավարկում էին սեփական նավերով (հայ նավապետների ղեկավարությամբ և հայկ. դրոշի ներքո), որոնք այդ շրջանում կազմել են, այսպես կոչված, «տեղական նավերի» (աշխարհի այդ շրջանի բոլոր նավերը, բացառությամբ եվրոպական փոքրաթիվ նավերի, որոնք իրավունք ունեին նավարկելու Եվրոպա՝ Աֆրիկյան շրջանցելով) գերակշռող մասը:

Հայկ. նավերը խարսխվում էին ոչ միայն եվրոպական գաղութներում, այլև Արևելքի պետություններում, որտեղ վայելում էին մեծ արտոնություններ: Այդ երկրների տիրակալները, շահագրգռված լինելով հայ վաճառականների առևտրի խրախուսմամբ, հովանավորում էին նրանց, անհրաժեշտության դեպքում թույլ տալիս նավարկելու իրենց դրոշի ներքո: Մանիլյան առևտրում հայ վաճառականները բախվել են մեծ դժվարությունների: Եվրոպական գաղութարարները հնարավորություն չունենալով ազնվորեն մրցակցել հայ վաճառականների հետ, որոնք գերազանցում էին փորձով, կապերով, պայմանների գիտակությամբ և վայելում էին տեղական տիրակալների հովանավորությունը, դիմում էին անխիղճ կամայականությունների, խտրականության, օգտվելով այդ պետությունների քաղ., դիվանագիտական, տնտ. և ռազմ. աջակցությունից: Հետագայում, երբ մանիլյան առևտուրը կորցրեց իր սկզբնական նշանակությունը, հայ վաճառականների առևտուրը շարունակում էր կապող օղակ մնալ Հնդկաստանի, Չինաստանի և Արևելքի այլ երկրների հետ ծավալվող առևտրում: XVIII դ. կեսից *ծովահենության* ու *կապերության* և շարունակվող խտրականության հետևանքով Մանիլայի առևտրի հայկ. մենաշնորհին վերջ տրվեց: *Յու. Բարսեղով*

**ՄԱՆԻՆԵՐ**, հայ ժողովրդական քնարական երգվող քառատողեր, խաղիկներ (տես նաև *Քնարական երգեր*): Անվանումը նույն նշանակությամբ գործածական է նաև ադրբ. ու թուրք. ֆոլկլորում: Երբեմն նույնացվում են *վիճակի երգերի* հետ:

Մանի ասեմ ու շարեմ,
Ջա՜ն, ծաղիկ, ջա՜ն, ջա՜ն,
Լցնեմ տոպրակ ու կարեմ,
Ջա՜ն, վիճակ, ջա՜ն, ջա՜ն,
Առնեմ գյուղե գյուղ ընկնեմ,
Սրտիս սիրածին ճարեմ:

(Կոմիտաս, Երկերի ժողովածու, հ. 5):

**ՄԱՆԻՆԻԼ**, հակաշաքարախտային սուլֆանիլմիզանյութի ածանցյալ, դեղանյութ: Արյան մեջ շաքարի քանակության իջեցման մեխանիզմը պայմանավորված է ենթաստամոքսային գեղձի β-բջիջների խթանմամբ, որն ուղեկցվում է *ինսուլինի* սինթեզման և արտազատման ուժեղացմամբ: Մ. ուժեղացնում է նաև օրգանիզմ ներմուծած ինսուլինի ազդեցությունը՝ արգելակելով այն քայքայող ֆերմենտի՝ ինսուլինազի ակտիվությունը: Օգտագործվում է ներքին ընդունման ձևով (օրական 1—2 հաբ, ուտելուց հետո): Տես *Շաքարային հիվանդություն*:

**ՄԱՆԻՊՈՒՐ**, նահանգ (1972-ից) Հնդկաստանի հյուսիս-արևելքում, Բիրմայի սահ-

մանի մոտ: Տարածությունը 22,4 հզ. *կմ*² է, բնակչությունը՝ 1,1 մլն (1971): Վարչական կենտրոնը՝ Իմփհալ: Ռելիեֆում տիրապետում են միջօրեականի ուղղությամբ ձգված լեռնաշղթաների և միջլեռնային լայն հովիտների հերթագայությունը: Կլիման չափավոր տաք է: Տարեկան տեղումները 1500—2500 *մմ* են: Լեռների հողմակողմ լանջերին գերակշռում են խոնավ արևադարձային անտառները, հողմահակառակ լանջերին՝ տերևաթափ, ավելի վեր՝ լայնատերև և սոճու անտառներն ու մարգագետինները: Մ. հետամնաց գյուղատնտ. շրջան է: Մշակում են բրինձ, յուղատուներ, ծխախոտ, բամբակենի, պատիճավոր բույսեր: Զբաղվում են նաև այգեգործությամբ և շերամապահությամբ: Զարգացած է ջուլհակությունը:

**ՄԱՆԻՔԵՈՒԹՅՈՒՆ**, կրոնական-աղանդավորական ուսմունք միջնադարում: Առաջացել է III դ. Մերձավոր Արևելքում: Ուղղված է եղել մի կողմից *Սասանյանների* տիրապետության դեմ, որպես սոցիալական բողոք, մյուս կողմից՝ պաշտոնական *կրաղաշտականության* դեմ: Մ. սովորաբար կապվում է *գնոստիցիզմի* հետ: Անվանումն ստացել է իր սկզբնավորողի՝ *Մանիի* անունից, որին վերագրում են մոտավորապես 7 կրոնա-քարոզախոսական գրվածք: Մ. հիմնականում ձգտում էր երկնայինի և երկրայինի փոխհաշտեցման և փորձում էր համաձայնեցնել միմյանցից արմատապես տարբեր կրոնական ուսմունքներ (ըստ Մանիի՝ նոր ուսմունքը պետք է փոխարիներ մինչ այդ եղած բոլոր կրոններին, ուստի Մ. ներառնում էր զրադաշտականության, քրիստոնեության և բուդդայականության մի շարք տարրեր): Մ-յան հիմնական գաղափարը դուալիստական էր՝ լույսի (բարու) և խավարի (չարի) նախասկիզբը աշխարհում: Մանին ուսուցանում էր, որ չարը որպես նախասկիզբ, նույնքան ինքնակա է, որքան բարին: Արտացոլելով ժող. խավերի բողոքը տիրող դասակարգի դեմ՝ Մ. կոչ էր անում ճգնակեցության, ինքնազրկման, քարոզում հեռու մնալ ամուսնական կյանքից: Ըստ Մ-յան՝ մարդն իր կյանքով ու վարքագծով պետք է նպաստի միջավայրի լուսավոր (բարի) կողմերի ազատագրմանը, դրանով օգնելով բարուն և չարի դեմ նրա պայքարին, ուստի մարդը չպետք է սպանի իր նմանին ու կենդանիներին (Մ. մերժում էր նաև մսակերությունը):

Ուղղված լինելով Սասանյան պետության և սոցիալական անհավասարության դեմ՝ Մ. տարածվեց (հատկապես՝ քաղաքային բնակչության միջավայրում) Մերձավոր Արևելքում, Հռոմեական կայսրության արլ. ծայրագավառներում, Միջին Ասիայում, Հնդկաստանում, Չինաստանում և այլուր: Այն Հայաստան և Վրաստան ներթափանցեց IV դ., Պարսկաստանից: V դ. պաշտոնական քրիստոնեական միջավայրում Մ. համարվել է վտանգավոր աղանդ, որի դեմ պայքար է սկսվել: Եզնիկ Կողբացին իր «Եղծ աղանդոց» գրքում մերժել է Մ.: Նա բանավիճում է Մ-յան հետ «միասնականի» գաղափարի պաշտպանության դիրքերից: Աստիճանների թվարկումը (միակ, բանական, ոգի, բնություն) և ապա համեմատությունը («Ամեն ստեղծված կախված է նրանից՝ միասնականից և նախնականից, ինչպես արևի ճառագայթներն արեգակնային զընդից») վկայում են, որ Կողբացին պաշտպանում է նեոպլատոնականների մոնիստական հայացքներն ընդդեմ դուալիզմի և նախնական Մ-յան: Թեև Մ. քարոզել է հիմնականում պայքարի պասսիվ եղանակներ, բայց ենթարկվել է խիստ հալածանքների: VIII—IX դդ. Մ-յանը հալածում էր մահմեդականությունը: Սակայն Միջին Ասիայի մանիքեական համայնքները գոյատևել են բավական երկար: VIII դ. վերջին Մ. դարձել է Ույղուրական թագավորության պետ. կրոնը: Հետագայում այն դադարել է գոյություն ունենալ որպես ինքնուրույն կրոն: Չինաստանում Մ. վերջնականապես արգելվել է XIV դ.: Մ. խոշոր ազդեցություն է թողել հետագայի աղանդավորական շարժումների վրա:

*Գրկ.* Տեր-Մինասյան Ե. Գ., Միջնադարյան աղանդների ծագման և զարգացման պատմությունից, Ե., 1968: Дьяконов М. М., Очерк истории древнего Ирана, М., 1961. *Հ. Մկրտումյան*

**ՄԱՆԻՖԵՍՏ 1905-Ի ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 17-Ի** «Պետական կարգի կատարելագործման մասին», Նիկոլայ II-ի հրապարակած մանիֆեստը 1905-ի հոկտեմբերի համառուսաստանյան գործադուլի օրերին (տես *Հոկտեմբերյան համառուսաստանյան գործադուլ 1905*), երբ հաստատվել էր պայքարող ուժերի՝ հեղափոխության և ցարիզմի ժամանակավոր հավասարակշռություն: Մանիֆեստը նախապատրաստել էր Ս. *Վիտտեն*, որը ինքնակալության պահպանման միակ միջոցը համարում էր սահմանադրական զիջումները: Մանիֆեստը խոստանում էր քաղաքացիական ազատություններ, անձի անձեռնմխելիություն, խղճի, խոսքի, ժողովների և միությունների ազատություն, Պետ. դումայի ընտրություններին մասնակցելու (հնարավորին չափ) իրավունք (գլխավորապես բանվորներին և քաղաքային մտավորականությանը): Դուման ճանաչվում էր օրենսդիր մարմին, առանց որի հավանության ոչ մի օրենք ուժ չէր ստանա: Վիտտեն կազմեց նոր կառավարություն, հոկտ. 21-ին հարկադրված հայտարարվեց քաղ. ներում, այնուհետև վերացվեց նախնական գրաքննությունը: Սկսվեց նոր ընտրական օրենքի (հաստատվել է 1905-ի դեկտ. 11-ին) նախապատրաստությունը:

Լիբերալ բուրժուազիան մանիֆեստը ընդունեց բացահայտ հրճվանքով: Բոլշևիկները մերկացնելով մանիֆեստի խոստումների խաբեությունը՝ այն գնահատեցին որպես ապստամբած ժողովրդի առջև ցարիզմի հարկադրական կապիտուլյացիա:

**ՄԱՆԻՖԵՍՏ ՀԱՅ ՍՈՑԻԱԼ-ԴԵՄՈԿՐԱՏՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ**, հայ առաջին լենինյան իսկրայական կազմակերպության՝ *«Հայ սոցիալ-դեմոկրատների միության»* ծրագրային փաստաթուղթը: Գրել է Ս. Շահումյանը՝ Բ. Կնունյանցի և Ա. Զուրաբյանի ակտիվ մասնակցությամբ: Հրատարակվել է 1902-ի հոկտեմբերին, «Պրոլետարիատ» թերթի առաջին համարում: Մանիֆեստում հայ ս-դ-ները ազդարարում

«Հայ սոցիալ-դեմոկրատների միության մանիֆեստ»-ի ռուսերեն թարգմանության առաջին էջը

էին, որ իրենց միությունը հանդիսանում է ՌՍԴԲԿ մի ճյուղը, որը կռվելու է հանուն Ռուսաստանի պրոլետարիատի շահերի ընդհանրապես և հայկականի՝ մասնավորապես: Մանիֆեստում առաջ են քաշված սոցիալական հեղափոխության, միապետական-բուրժուական կարգերը տապալելու, արտադրության միջոցների մասնավոր սեփականության և սոցիալական անհավասարության վերացման խնդիրներ: Ազգային հարցում մանիֆեստը պահանջում էր կազմակերպել բոլոր ազգերի ս-դ-ների միասնական կուսակցություն, հասնել ազգերի իրավահավասարության, նրանց քաղ. ազատության ու ինքնորոշման: Այն անհրաժեշտ էր համարում ապագա «ազատ Ռուսիայում ֆեդերատիվ հասարակապետության կազմակերպությունը»: Աշխատավորներին բացատրելով տաժանքի, մասնակի կոհվների թույլ և անբավարար լինելու պատճառները, մանիֆեստը առաջադրում էր բոլոր ազգերի պրոլետարների ընդհանուր դասակարգային կռվի տեսակետը՝ «Պրոլետարներ ամբողջ աշխարհի, միացե՛ք» նշանաբանը:

Ողջունելով մանիֆեստի հրատարակումը՝ Վ. Ի. Լենինը «Իսկրա» թերթի 1903-ի № 33-ում («Հայ սոցիալ-դեմոկրատների մանիֆեստի մասին») բարձր գնահատեց Հայ սոցիալ-դեմոկրատների միության դերն ու նշանակությունը, «...մանավանդ ազգային հարցի ճիշտ դրվածքը տալու նրա ուշագրավ փորձը» (Երկ., հ. 6, էջ 411):

*Գրկ.* Շահումյան Ս., Երկ. լիակտ. ժող., հ. 1, Ե., 1975, էջ 43—49: Մնացականյան Ա. Ն., Վ. Ի. Լենինը և հայ ժողովրդի ազատագրական պայքարը, Ե., 1963, էջ 83—100: Բարսեղյան Խ. Հ., Մարքսիզմի տարածումը Հայաստանում, գիրք 1, Ե., 1967, էջ 303—314: Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծեր, Ե., 1967: *Ա. Մնացականյան*

**ՄԱՆԿԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, բառացի՝ գիտություն երեխաների մասին, փաստորեն՝ երեխաների զարգացման հոգեբանական, անատոմա-ֆիզիոլոգիական, կենսաբանական, սոցիոլոգիական կոնցեպցիաների ամբողջական տեսություն չներկայացնող ընդհանրություն: Մ-յան առաջացումը կապված էր *հոգեբանության* և *մանկավարժության* մեջ էվոլյուցիոն գաղափարների ներթափանցման և հոգեբանության կիրառական ճյուղերի ու փորձարարական մանկավարժության զարգացման հետ: Մ-յան բնույթի առաջին աշխատանքները վերաբերում են XX դ. սկզբին (արտասահմանյան երկրներում՝ Գ. Հոլ, Ջ. Բոլդուին,

Ռուսաստանում՝ Վ. Մ. Բեխտերև, Գ. Ի Ռոսոլիմո, Ա. Պ. Նեչաև և ուրիշներ):

Մինչհեղափոխական Ռուսաստանում Մ. ներկայացվել է մանկավարժական հոգեբանության (1906 և 1909) և փորձարարական մանկավարժության (1910, 1913, 1916) համագումարներում: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո ընդլայնվեց մանկաբանական հիմնարկների ցանցը, հրատարակվեց ծավալուն գրականություն, տեղի ունեցան մանկաբանների կոնֆերանս (1927) և համագումար (1928), սկսվեց հրատարակվել «Պեդոլոգիա» («Педология», 1928—32) հանդեսը: 1920-ական թթ. վերջին Մ. հավակնում էր ստանձնել «Երեխաների մասին մարքսիստական գիտության» դերը, գիտականորեն չհիմնավորված տեստերով, մանկավարժությունը նսեմացնող և հակահոգեբանական ուղղվածությամբ մեծապես վնասում էր սովետական դպրոցին: Մ-յան իդեալիստական, մեխանիստական տեսակետները խստորեն քննադատվեցին: ՀամԿ(բ)Կ ԿԿ 1936-ի հուլիսի 4-ի «Լուսժողկոմատների համակարգում մանկաբանական խեղաթյուրումների մասին» որոշումից հետո մանկաբանական հիմնարկներն ու հրատարակությունները վերացվեցին, միջոցառումներ իրականացվեցին մանկավարժության ու հոգեբանության հետագա զարգացման համար:

*Գրկ.* Петровский А. В., История советской психологии, М., 1967.

**ՄԱՆԿԱԲԱՐՁՈՒԹՅԱՆ ԵՎ ԳԻՆԵԿՈԼՈԳԻԱՅԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ** գիտահետազոտական՝ Ն. Կ. Կրուպսկայայի անվան, հիմնվել է Երևանում, 1937-ին՝ մայրության և մանկության պահպանության գիտահետազոտական ինստիտուտի (կազմակերպված 1931-ին) բազայի վրա: Ինստ-ի ստեղծմանը, գիտական ու գործնական աշխատանքների կազմակերպմանը նպաստել են դիրեկտորներ Գ. *Արեշյանը*, Պ. *Մարգարյանը* և Գ. Օկոնը:



Ն. Կ. Կրուպսկայայի անվան մանկաբարձության և գինեկոլոգիայի ինստիտուտը

Ինստ-ը ունի մանկաբարձության բաժին՝ բնականոն մանկաբարձության, վաղաժամ ծննդաբերությունների, օպերվացիոն, հղիության և արտասեռական ախտաբանության, նորածինների բաժանմունքներով, գինեկոլոգիայի բաժին՝ վիրահատական և կոնսերվատիվ բուժման բաժանմունքներով, կանանց կոնսուլտացիա (հետագայում վերանվանվել է գիտա-կոնսուլտացիոն պոլիկլինիկա)՝ ֆիզիոթերապևտիկ բաժանմունքով, ամլության, էնդոկրինոլոգիական, ստոմատոլոգիական, թերապևտիկ կաբինետներով: Կան նաև կլինիկաախտորոշիչ, բջջաբանության, ախտաբանա-մորֆոլոգիայի, շճաբանության, ռեզուս-անհամատեղելիության, բակտերիալոգիայի, կենսաքիմիայի, էնդոկրինոլոգիայի, թունագիտության և էլեկտրոնային միկրոսկոպիայի լաբորատորիաներ, ռենտգենախտորոշման կաբինետ, ախտաբանա-անատոմիական թանգարան, կազմակերպչա-մեթոդական բաժին ևն: Ինստ-ում գործում է գիտական խորհուրդ: Ինստ-ի հիմնական խնդիրներն են՝ կնոջ օրգանիզմի առանձնահատուկ ֆունկցիայի ֆիզիոլոգիայի և ախտաբանության յուրահատկությունների, պտղի և նորածնի ֆիզիոլոգիայի և ախտաբանության, մեռածածնության, մայրական ու մանկական մահացության, արտադրական ձեռնարկություններում և գյուղատնտեսության մեջ կնոջ աշխատանքի հիգիենայի և պրոֆեսիոնալ ախտաբանության, առողջության պահպանման հարցերի ուսումնասիրությունը, ծննդօգնության հիմնարկներին և բնակչությանը ցույց տրվող մեթոդական ու բարձրորակ գիտագործնական օգնության կազմակերպումը, երիտասարդ մանկաբարձ-գինեկոլոգների կատարելագործումն ու մասնագիտացումը: Ինստ-ը 1939—73-ին հրատարակել է գիտական աշխատություններ:

**ՄԱՆԿԱԲԱՐՁՈՒԹՅՈՒՆ**, *բժշկագիտության* բաժին. ուսումնասիրում է *հղիության*, *ծննդաբերության* և ետծննդյան շրջանի ֆիզիոլոգիական և ախտաբանական պրոցեսները, մշակում ծննդօգնության, բարդությունների կանխարգելման մեթոդներ: Մ. բժշկագիտության հնագույն ճյուղերից է: Եգիպտական պապիրուսներում (III—II հազարամյակ մ. թ. ա.) տեղեկություններ կան դժվար և բարդացած ծննդաբերությունների ժամանակ օգնության որոշ ձևերի, իսկ հնդիկների սուրբ գրքերում (VIII դ. մ. թ. ա.) հղիների ռացիոնալ սննդի, ծննդօգնության մասին: Հիպոկրատը խորհուրդ էր տալիս կատարել պտղաշրջում գլուխն ի վար (ոչ ճիշտ դրությունների ժամանակ) և պտղահատում (կենդանի պտղով ծննդաբերության անհնարինության դեպքում): Գալենը և ուրիշներ (II դ.) մշակել ու կիրառել են պտղաշրջում ոտն ի վար: Հին ժամանակներից հայտնի է եղել նաև *կեսարյան հատումը*, որը մեծ կիրառություն ունի նաև այժմ: Միջին դարերում Մ-յան զարգացումը դանդաղել է, և մեծ տարածում են ստացել պտղահատման վիրահատությունները: XVI դ. կնոջ սեռական օրգանների կառուցվածքի մասին ստացվել են անատոմիական առաջին տեղեկությունները, և սկիզբ է դրվել գիտական ու վիրահատական Մ-յան զարգացմանը: Մեծ նշանակություն են ունեցել անգլիացի մանկաբարձ Պ. Չեմբեռլենի (1560—1631) հայտնագործած մանկաբարձական գլխային աքցանները, որոնք մանկաբարձական պրակտիկայում ներդրել է նիդեռլանդացի վիրաբույժ Յ. Պալֆեյնը՝ 1723-ին: XVII դ. Փարիզում հիմնադրվել է մանկաբարձական առաջին կլինիկան, ֆրանսիացի մանկաբարձ Ֆ. Մորիսոն գրել է հղի կանանց հիվանդությունների մասին գիրքը: XVIII դ. հիմնվել են Մ-յան ամբիոններ, կլինիկաներ, և սկսվել է Մ-յան սիստեմատիկ դասավանդումը: Ռուսաստանում Մ-յան հիմնադիրը եղել է Ն. Մ. Ամբոդիկ-Մաքսիմովիչը, որը Մ-յան դասավանդման պրոցեսում կիրառել է կնոջ հատուկ մոդել (ֆանտոմ): Հունգարացի մանկաբարձ Ի. Զեմելվեյսը (XIX դ.) բացահայտել է ետծննդյան սեպտիկ հիվանդությունների վարակելիությունը: Ջ. Սիմպսոնը մանկաբարձական պրակտիկայում կիրառել է նարկոզի, ինչպես նաև հակամանրէության և աննեխության մեթոդները: XIX դ. վերջին և XX դ. սկզբից սկսել են ուսումնասիրել դաշտանային ցիկլի և հղիության հետ կապված պրոցեսները: Ռուս մանկաբարձ Վ. Ստրոգանովը մշակել է էկլամպսիայի բուժման եղանակ, որի կիրառումը զգալիորեն իջեցրել է մահացությունը: Մ-յան զարգացմանը նպաստել է ներզատիչ գեղձերի ուսումնասիրումը: Անգլիացի գիտնական Հ. Դեյլը (1906) հաստատել է հիպոֆիզի ետին բլթի հորմոնի (օքսիտոցին) արգանդը կծկող հատկությունը: Հղիության վաղ ախտորոշման նպատակով գերմ. բժիշկներ Զ. Աշհեյմը և Բ. Ցոնդեկը 1928-ին առաջարկել են հորմոնային հետազոտման եղանակ: 50-ական թթ. մանկաբարձական աքցանների փոխարեն սկսեցին կիրառել վակուում-էքստրակտորներ: Ժամանակակից Մ. զբաղվում է ծննդաբերության ընթացքի կարգավորման, ընկերքի կառուցվածքի և ֆիզիոլոգիայի, ինչպես նաև մանկաբարձական էնդոկրինոլոգիայի հարցերով: Ձոնդ- և էլեկտրասրտագրության, ուղեղագրության, ջրաթաղանթադիտման և այլ մեթոդների կիրառումը հնարավորություն են տվել ուսումնասիրելու պտղի և նորածնի ֆիզիոլոգիան ու ախտաբանությունը: Մ. օգտվում է ուսումնասիրման անատոմիական, ֆիզիոլոգիական, բջջաբանական, բակտերիալոգիական և կենսաքիմիական մեթոդներից: Մ. բաղկացած է հետևյալ բաժիններից՝ հղիության, ծննդաբերության, ետծննդյան շրջանի ֆիզիոլոգիա և ախտաբանություն, վիրահատական Մ., նորածնի ֆիզիոլոգիա և ախտաբանություն: ՍՍՀՄ-ում Մ-յան զարգացմանը նպաստում է հղիների բուժպասարկման դիսպանսերային սկզբունքը և *մայրության ու մանկության պահպանության* նկատմամբ հատուկ ուշադրությունը: Սովետական մանկաբարձները զբաղվել են ծննդաբերության ցավազրկման, պտղի և նորածնի շնչահեղձության կանխարգելման ու բուժման, մայրական մահացության պատճառների և Մ-յան հրատապ հարցերի ուսումնասիրությամբ: Մշակվել է հղիներին ծննդաբերությանը նախապատրաստելու պսիխոպրոֆիլակտիկ եղանակ: Մ-յան ասպարեզում գիտական աշխատանքներ են կատարվում ԳՀԻ-ներում, բժշկ. ինստ-ների մանկաբարձա-գինեկոլոգիական կլինիկաներում, ծննդատներում ևն: ՍՍՀՄ-ում գոյություն ունի մանկաբարձ-գինեկոլոգների ընկերություն (1954-ից՝ Մանկաբարձ-գինեկոլոգների միջազգային կազմակերպության անդամ է): ՍՍՀՄ-ում մանկաբարձ-գինեկոլոգներ պատրաստում են բժշկ. ինստ-ներում և համալսարանների բժշկ. ֆակուլտետնե-

րում, իսկ որակյալ մասնագետներ՝ բժիշկների կատարելագործման ինստ-ներում: *Մանկաբարձուհիներ* պատրաստում են բժշկ. ուսումնարաններում: ՍՍՀՄ-ում Մ-յան պրոբլեմները լուսաբանվում են «Ակուշերստվո ի գինեկոլոգիա» («Акушерство и гинекология», 1936-ից) ամսագրում:

Հայաստանում Մ. զարգացել է սովետական կարգերի հաստատումից հետո. 1920-ին Երևանի առաջին կլինիկական հիվանդանոցին կից, Գ. *Արեշյանի* նախաձեռնությամբ, բացվել է մանկաբարձական ստացիոնար՝ 20 մահճակալով (հետագայում՝ Արեշյանի անվ. № 2 կլինիկական ծննդատուն): 1931-ին կազմակերպվել է մայրության և մանկության պահպանության ԳՀԻ (1937-ից՝ մանկաբարձության և գինեկոլոգիայի ինստ.): Հետագայում ՀՍՍՀ առողջապահության մինիստրությանը կից հիմնվել է ծննդօգնության խորհուրդ, 1928-ին՝ մանկաբարձ-գինեկոլոգների ասոցիացիա (հետագայում՝ ՀՍՍՀ-ի մանկաբարձ-գինեկոլոգների գիտական ընկերություն): Հայաստանի վերաբերյալ մանրամասն տվյալներ տես *Գինեկոլոգիա* հոդվածում:

*Գրկ.* Մարգարյան Պ. Հ., Մանկաբարձություն, Ե., 1960: Арутюнян Г. Г., Гинекология и акушерство в Армении в древние и средние века, Е., 1974; Бодяжина В.И., Жмакин К.Н., Акушерство, 2 изд., перераб. и доп., М., 1979.

*Պ. Մարգարյան*

**ՄԱՆԿԱԲԱՐՁՈՒՀԻ**, միջնակարգ մասնագիտական կրթությամբ բժշկական աշխատող, որն օգնություն է ցույց տալիս հղիության և ծննդաբերության ժամանակ: Զբաղվում է հղիների պատրոնաժով, կատարում բժշկի նշանակած պրոցեդուրները, ընդունում ծնունդը: Կոլտնտեսային ծննդատներում և մանկաբարձական կետերում Մ. կատարում է հղի կանանց հաշվառում, ընդունում է բնականոն ծնունդները, իսկ սրտի արատով կամ որևէ հիվանդությամբ տառապող և մանկաբարձական բարդություններով հղիներին ժամանակին շուտ տեղափոխում շրջկենտրոնի ծննդատուն: Անհետաձգելի դեպքերում Մ-ուն թույլատրվում է կատարել պտղապարկի պատռում, շեքահատում, ձեռքով ընկերքի հեռացում, միջամտություն պտղի հետույքային առաջադրության դեպքում ևն: Մ. պարտավոր է նաև զրույցներ անցկացնել կնոջ հիգիենայի և երեխաների խնամքի մասին:

**ՄԱՆԿԱԲՈՒԺՈՒԹՅՈՒՆ**, պեդիատրիա, բժշկական դիսցիպլին. ուսումնասիրում է մանկական օրգանիզմի անատոմիան ու ֆիզիոլոգիան՝ տարիքային տարբեր շրջաններում, *մանկական հիվանդությունները*, դրանց բուժումն ու կանխարգելումը: Երեխաների մտավոր և ֆիզիկական համաչափ զարգացումն ապահովող պայմանների ուսումնասիրությամբ զբաղվում է *երեխաների և դեռահասների հիգիենան:* Մ., որպես ինքնուրույն գիտություն, ձևավորվել է XIX դ. 2-րդ կեսին: Մ-յան զարգացման ասպարեզում մեծ ներդրում ունեն XVIII դ. անգլիացի բժիշկներ Ու. Կադոգանը, Գ. Արմսթրոնգը, Մ. Ունդերվուդը, Է. Ջենները: Մինչև XIX դ. վերջը մանկաբույժների Փարիզյան դպրոցն ամբողջ Եվրոպայի համար մանկաբույժների պատրաստման կենտրոն էր: Ռուսաստանում երեխաների առողջության պահպանման առաջին հետազոտությունները կատարել են Ս. Զիբելինը, Ն. Ամբոդիկ-Մաքսիմովիչը, Ն. Նովիկովը, Կ. Գրումը, իսկ Ս. Խոտովիցկին հրատարակել է մանկական հիվանդությունների վերաբերյալ առաջին ձեռնարկը՝ «Մանկաբուժություն»-ը (1847): 1834-ին Պետերբուրգում բացվել է առաջին մանկական հիվանդանոցը (ներկայումս՝ Ն. Ֆիլատովի անվ.): 1866-ին Ն. Տոլսկին Մոսկվայի համալսարանին կից կազմակերպել է մանկական կլինիկա, որը հետագայում դարձավ Մ-յան կենտրոն: Մ. արմատապես վերափոխվել է Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո: Այն աստիճանաբար բաժանվել է ավելի նեղ մասնագիտությունների, ստեղծվել է բուժական և կանխարգելիչ մանկական հիմնարկների լայն ցանց: Կազմակերպվել են ԳՀԻ-ներ և մանկաբույժներ պատրաստող հատուկ ֆակուլտետներ, ստեղծվել են *մայրության և մանկության պահպանության*, ինչպես նաև երեխաների և դեռահասների առողջության պահպանման համակարգեր, որոնք ապահովել են *մանկական մահացության* խիստ նվազումը: Մ-յան պրոբլեմների գիտական մշակմամբ զբաղվում են ՍՍՀՄ ԲԳԱ մանկաբուժության ինստ-ը, հանրապետական 14 ԳՀԻ, ինչպես նաև բժշկ. ինստ-ների և համալսարանների Մ-յան մոտ 300 ամբիոններ: Առաջինը ՍՍՀՄ-ում է ստեղծվել *պտղի նախածննդյան պահպանման* համակարգը:

Մ-յան ժամանակակից պրոբլեմներն են՝ աճող օրգանիզմի ռեակտիվության ուսումնասիրությունը բնականոն և ախտաբանական վիճակներում, երեխաների ռեակցիան իմունային պատրաստուկների նըկատմամբ, քրոնիկական հիվանդությունների ծագման և զարգացման պայմանների, մոր և պտղի օրգանիզմների փոխհարաբերության մեխանիզմների ու խանգարման հետևանքների բացահայտումը, երեխաների մասնագիտական օգնության առավել արդյունավետ ձևերի մշակումը: Մ-յան պրոբլեմները լուսաբանվում են «Պեդիատրիա» («Педиатрия», 1934-ից), «Պեդիատրիա, ակուշերստվո ի գինեկոլոգիա» (1938—40, 1945-ից՝ «Օխորոնա մատերինստվա ի դիտինստվա»), «Վոպրոսի օխրանի մատերինստվա ի դետստվա» («Вопросы охраны материнства и детства», 1956-ից) ամսագրերում:

Հայաստանում Մ. զարգացել է սովետական կարգերի հաստատումից հետո: 1921-ին ՀՍՍՀ առժողկոմատին կից ըստեղծվել են մայրության և մանկության պահպանության, երեխաների և դեռահասների առողջության պահպանման բաժիններ, 1931-ին՝ մայրության և մանկության պահպանության ինստ. (1937-ին վերանվանվել է մանկաբարձության և գինեկոլոգիայի ինստ.): 1926-ին Հ. Գաբրիելյանի նախաձեռնությամբ Երևանի համալսարանի բժշկ. ֆակուլտետում հիմնվել է Մ-յան ամբիոն և մանկական կլինիկական հիվանդանոց: 1944-ին Երևանի բժշկ. ինստ-ում հիմնվել է երեխաների և դեռահասների հիգիենայի ամբիոնը, 1959-ին՝ մանկաբուժական ֆակուլտետը: 1971-ին ընդհանուր հիգիենայի և պրոֆեսիոնալ հիվանդությունների ԳՀԻ-ում կազմակերպվել է երեխաների և դեռահասների հիգիենայով զբաղվող խումբ: ՀՍՍՀ-ում Մ-յան բնագավառում գիտական հետազոտությունները կենտրոնացվել են 3 ուղղությամբ՝ պուլմոնոլոգիա (ղեկավար՝ Վ. Աստվածատրյան), նեֆրոլոգիա (Ս. Իբոյան) և սիրտ-անոթային ախտաբանություն (Ա. Գալստյան):

*Վ. Աստվածատրյան*

**ՄԱՆԿԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔ**, անչափահասների վարձու աշխատանք: Կապիտալիզմի զարգացման վաղ շրջանում Մ. ա. շահագործվել է մեծահասակներին համահավասար, որը հանգեցրել է երեխաների և դեռահասների ֆիզիկական ու բարոյական դեգրադացիայի, նրանց բարձր մահացության: Մ. ա-ի օրենսդրական առաջին սահմանափակումը իրականացվել է Մեծ Բրիտանիայում (1833), սահմանվել է 9—13 տարեկան երեխաների 8-ժամյա աշխատանքային օր, արգելվել 9—18 տարեկան երեխաների և դեռահասների գիշերային աշխատանքը: Աշխատանքի միջազգային կազմակերպության (ԱՄԿ, МОТ) № 59 (1937) կոնվենցիան երեխաներին աշխատանքի ընդունելու նվազագույն տարիքը սահմանել է 15-ը: Մինչդեռ Իրանում, Թուրքիայում, Թաիլանդում, Կոստա Ռիկայում, Հայիթիում երեխաներին աշխատանքի են ընդունում 12 տարեկանից: Ճապոնիայում, Ավստրալիայում, Իսլանդիայում, Շվեդիայում օգտագործվում է երեխաների և դեռահասների գիշերային աշխատանքը: ԱՄՆ-ի մեծ մասում 16 տարին չլրացրած դեռահասների աշխատանքային օրը 8 ժամ է: Սոցիալիստական երկրներում «մանկական աշխատանք» հասկացություն չկա: Սովետական կառավարության առաջին դեկրետներով արգելվեց երեխաների և կարգորոշվեց դեռահասների աշխատանքը: Այդ իսկ դրույթները մտան ՌՍՖՍՀ 1918 և 1922 թվականների աշխատանքային օրենսգրքերի մեջ: ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների աշխատանքային օրենսդրություններով աշխատանքի կարող են ընդունվել 16, իսկ բացառիկ դեպքերում՝ 15 տարեկանները:

**ՄԱՆԿԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ** ՍՍՀՄ-ում, արտադպրոցական հիմնարկություն, որի գործունեության նպատակը երեխաների և պատանիների կոմունիստական դաստիարակությունն է, սովորողներին օգնելը՝ խորապես տիրապետելու գիտության հիմունքներին, նրանց մեջ ընթերցանության կուլտուրա սերմանելը: Մ. գ-ի ընթերցողները հիմնականում I—VIII դասարանների աշակերտներ են, կարդալ իմացող նախադպրոցականներ և մանկական ընթերցանության ղեկավարներ: Մ. գ-ի ֆոնդերը համալրվում են ընթերցողների տարիքային առանձնահատկություններին ու նախասիրություններին համապատասխան և պարունակում են հասարակական-քաղաքական, գիտահանրամատչելի, գեղարվեստական գրականություն, տեղեկատու հրատարակություններ, մանկական պարբերականներ, ձայնապնակներ, դիաֆիլ-

մեր ու դիապոզիտիվներ, ինչպես նաև գիտամեթոդական գրականություն ու մատենագիտական հրատարակություններ՝ մանկական ընթերցանության ղեկավարների համար: Ռուսաստանում առաջին Մ. գ-ները ստեղծվել են XIX դ. 2-րդ կեսին՝ մանկավարժական և կուլտուր-լուսավորական ընկերությունների, մասնավոր անձանց միջոցներով: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո ամենուր երևան եկան ինքնուրույն Մ. գ-ներ: Նախաձեռնողներից մեկը Ն. Կ. Կրուպսկայան էր: 1979-ին ՍՍՀՄ-ում կար մոտ 8,2 հզ. Մ. գ., ավելի քան 19,4 մլն ընթերցող: Երեխաներին սպասարկում են նաև դպրոցական գրադարանները և մեծահասակների մասսայական գրադարանների մանկական բաժինները: Հանրապետական և մարզային Մ. գ-ները հրատարակում են հանձնարարական մատենագիտական ուղեցույցներ՝ երեխաների և մանկական ընթերցանության ղեկավարների համար, գրադարանային աշխատանքի առաջավոր փորձը ընդհանրացնող մեթոդական գրականություն, գրադարանագիտական նյութեր ևն: Մ. գ-ների մեթոդական օգնության համամիութենական կենտրոնը Վ. Ի. Լենինի անվ. ՍՍՀՄ պետ. գրադարանն է:

ՀՍՍՀ-ում առաջին Մ. գ. հիմնադրվել է 1933-ին, Երևանում, որի հիմքի վրա 1963-ին կազմակերպվել է Խնկո Ապոր անվ. հանրապետական մանկական գրադարանը, որը և ՀՍՍՀ Մ. գ-ների գիտամեթոդական կենտրոնն է: 1981-ին ՀՍՍՀ-ում գործում էին ավելի քան 80 շրջանային, քաղաքային Մ. գ. ու բաժին, 1295 դպրոցական գրադարան:

*Գ. Աղախանյան*

**ՄԱՆԿԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ** Խնկո Ապոր անվան հանրապետական, կազմակերպվել է 1963-ին, Երևանի լուսաշխի տանը 1933-ին ստեղծված ՀՍՍՀ առաջին մանկական գրադարանի հիման վրա: Խնկո Ապոր անունով է կոչվում 1935-ից: ՀՍՍՀ մանկական ու դպրոցական գրադարանների գիտա-մեթոդական կենտրոնն է: Գրադարանը պահպանում և պրոպագանդում է կենտրոնական ու հանրապետական հրատարակչությունների լույս ընծայած գրականությունը (տարեկան ստանում է 30—35 հզ. միավոր գրականություն, 154 անուն կենտրոնական ու հանրապետական պարբերական հրատարակություններ): 1974-ից անվճար ստանում է հանրապետությունում լույս տեսնող մանկապատանեկան գրականության պարտադիր օրինակները: Ունի շուրջ 300 հզ. միավոր գրականություն: Հրատարակում է մասնագիտական ցանկեր, մեթոդական հանձնարարականներ, գրադարանագիտական նյութեր, 1963-ից՝ նշանավոր և հիշարժան տարեթվերի օրացույց: Գործում են արվեստի և մշակույթի, պատանի հրավարանի և գրադարանավարի դպրոցներ, գրական, ասմունքի, թատերական, նկարչական, կազմարարական խմբակներ: Գրադարանն ունի 13 բաժին (նախադպրոցական, 1-ին և 4—8-րդ դասարանների, սպասարկման, երաժշտական գրականության, ընթերցանությունը ղեկավարողների, օտար լեզուներով և այլն. գրականության ու մամուլի սպասարկման ևն), 26 ենթաբաժին, գրապահոցներ և ընթերցասրահներ:

*Հ. Դանիելյան*


Խնկո Ապոր անվան մանկական գրադարանի շենքը


Գրադարանի ընթերցասրահներից

**ՄԱՆԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, գեղարվեստական, գիտագեղարվեստական և գիտահանրամատչելի այն ստեղծագործությունները, որոնք հատկապես գրված են նախադպրոցականից մինչև դպրոցական բարձր տարիքի երեխաների համար: Մ. գ. հասկացությունն ընդգրկում է նաև մեծերի համար գրված, բայց մանկական ընթերցանության շրջանակ մտած բազմաթիվ գրքեր, ամենից առաջ՝ ժող. ստեղծագործության առանձին նմուշներ («Սասունցի Դավիթ», «Աք Իգորի ճակատամարտի մասին») ու դասականների գործեր: Աշխարհի երեխաների սիրելի գրքերից են Մ. Սերվանտեսի «Դոն Կիխոտ»-ը, Դ. Դեֆոյի «Ռոբինզոն Կրուզո»-ն, Ջ. Սվիֆտի «Գուլիվերի ճանապարհորդությունը», Ֆ. Ռաբլեի «Գարգանտյուա և Պանտագրյուել», Գ. Բիչեր-Սթոուի «Քեռի Թոմասի խրճիթը», Հ. Մալոյի «Առանց ընտանիքի», Է. Վոյնիչի «Բոռը» վեպերը, Մարկ Տվենի, Վ. Սկոտի, Ժյուլ Վեռնի, Չ. Դիքենսի, Ֆ. Կուպերի, Հ. Անդերսենի և համաշխարհային գրականության այլ դասականների ստեղծագործությունները:

Հայ իրականության մեջ մանկապատանեկան ընթերցանության ոսկե ֆոնդն են մտել Մովսես Խորենացու «Հայոց պատմություն», Եղիշեի «Վարդանանց և հայոց պատերազմի մասին» երկերը, Ներսես Շնորհալու հանելուկները, Մխիթար Գոշի և Վարդան Այգեկցու առակները, Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի»-ն, Ղ. Աղայանի, Պ. Պռոշյանի, Մ. Նալբանդյանի, Րաֆֆու, Ա. Շիրվանզադեի, Հ. Պարոնյանի, Նար-Դոսի, Հ. Թումանյանի, Ա. Իսահակյանի բազմաթիվ ստեղծագործություններ: Մանուկները սիրով են կարդում Հ. Հակոբյանի, Ե. Չարենցի, Ս. Զորյանի, Դ. Դեմիրճյանի, Ա. Բակունցի, Գ. Սարյանի, Ն. Զարյանի, Հ. Շիրազի, Պ. Սևակի, Ս. Կապուտիկյանի, Ս. Խանզադյանի, սովետահայ մյուս նշանավոր գրողների մանկական երկերը: Հայ երեխաների սիրելի ստեղծագործություններից են ռուս գրողներ Ա. Պուշկինի հեքիաթներն ու բանաստեղծությունները, Ի. Կռիլովի առակները, Ն. Գոգոլի, Ի. Տուրգենևի, Լ. Տոլստոյի, Ա. Ֆադեևի, Վ. Կատաևի, Ն. Օստրովսկու, Բ. Պոլևոյի և շատ ուրիշների վեպերն ու պատմվածքները:

Մարդասիրական բարձր իդեալները, բարոյական մաքրությունը, երեխայի անհատականության նկատմամբ հարգանքի զգացումը, նրա հոգեբանության, երազանքների խոր արտացոլումը՝ ստեղծագործական բազմազան ձևերի, արտահայտչամիջոցների, ոճական կատարյալ հնարանքների օգտագործումով, սովետական Մ. գ. դարձրել են աշխարհում լավագույններից մեկը: Գաղափարականգեղարվեստական մակարդակով այն կանգնած է մեծերի համար ստեղծված գրականության կողքին: Սովետական Մ. գ-յան զարգացմանը մեծապես նպաստել են Մ. Գորկին, Ն. Կրուպսկայան, Կ. Չուկովսկին, Ս. Մարշակը, հետագայում նաև՝ Ա. Գայդարը, Ա. Բարտոն. Վ. Կատաևը, Ս. Միխալկովը, Վ. Կավերինը և ուրիշներ:

Հայ գրականության մեջ Խ. Աբովյանն առաջինն էր, որ մանուկների համար կազմեց «Պարապ վախտի խաղալիք» (1838—41, հրտ. 1864) և «Նախաշավիղ կրթության» (1837—40, հրտ. 1862) ժողովածուները: Մեր Մ. գ-յան ավանդույթների ստեղծման, ձևավորման ու հարստացման գործում մեծ դեր են խաղացել Ռ. Պատկանյանը, Ղ. Աղայանը, Հ. Թումանյանը: Նրանց հեքիաթները, պոեմները, պատմվածքները, զրույցներն ու բանաստեղծությունները կրթել ու դաստիարակել են հայ մանուկների շատ սերունդներ: Հայ Մ. գ-յան զարգացման ասպարեզում անգնահատելի է «Աղբյուր» (1883—1918, Թիֆլիս), «Հասկեր» (1905—1916, Թիֆլիս), «Բուրաստան մանկանց» (1882—90, Կ. Պոլիս) և մանկական այլ պարբերականների դերը (տես *Մանկական մամուլ*):

Հայ Մ. գ. սովետական շրջանում նոր աստիճանի բարձրացավ Դ. Դեմիրճյանի, Ե. Չարենցի, Ս. Զորյանի, Մ. Արազու և այլոց ջանքերով: Խնկո Ապերը (Ա. Խնկոյանը) և Հ. Հայրապետյանը դարձան սովետահայ մանկական պոեզիայի դրոշակակիրները: Այդ գործում իր ավանդն ունի նաև Հակոբ Աղաբաբը: Նրանք իրենց պարզ, գրավիչ, պատկերավոր ոտանավորներում փառաբանեցին աշխատանքը և արարող մարդուն, թևավորեցին երեխաների երազանքները: Ընդարձակվեցին Մ.գ-յան թեմատիկ և ժանրային սահմանները: 1920-ական թթ. կեսերից իրեն հաստատեց մանկապատանեկան արձակը: Ծնվեցին Ս. Զորյանի՝ անապատանության թեմային նվիրված «Խուժան Արշոն» (1928) և «Սև Սեթոն» (1935), Մ. Արմենի «Սկաուտ № 89» (1933), Վ. Անանյանի «Կրակե օղակի մեջ» (1930) և «Քարանձավի բնակիչները»(1930) վիպակները:

Վ. Անանյանը սովետահայ Մ. գ-յան մեջ դարձավ բնասիրական զրույցի և որսորդական պատմվածքի ժանրերի հիմնադիրը: Հետագայում նրա անվան հետ կապվեց նաև գիտաարկածային վիպակի («Սևանի ափին», 1951, «Հովազաձորի գերիները», 1956), գիտագեղարվեստական արձակի («Հայաստանի կենդանական աշխարհը», հ. 1—5, 1961—75) ժանրերի սկզբնավորումը: Սովետահայ Մ. գ-յան սկզբնավորմանը և զարգացմանը մեծապես օգնել են «Պատկոմ» (1923, 1925-ից՝ «Պիոներ», Երևան), «Կարմիր ծիլեր» (1923—39, 1939—41՝ «Հոկտեմբերյան սերունդ», Թիֆլիս) մանկական ամսագրերը, «Պիոներ կանչ» թերթը (1925, Երևան):

1930-ական թթ. վերջերին սովետահայ Մ. գ. արդեն իր ինքնատիպ դեմքն ուներ. այն աչքի էր ընկնում թեմաների և ժանրերի բազմազանությամբ, գրական նոր ուժերի մուտքով (Սարմեն, Աղավնի, Վ. Տալյան, Վ. Վարդանյան, Ռ. Ղարիբյան, Մ. Կորյուն, Ա. Դարբնի և ուրիշներ):

Ետպատերազմյան հայ մանկապատանեկան արձակի նշանավոր ներկայացուցիչներից մեկը Խ. Գյուլնազարյանն է: Նրա «Օրերի ճանապարհը» (1962) եռագրությունը, արկածային վիպակները, «Լավ ճանապարհորդները» (1953), «Ոսկի որոնողները» (1964), «Պատվո քարը» (1970), «Զարմանալի հեքիաթներ» (1974), «Դեռ դպրոց չենք գնում» (1978) և այլ ժողովածուներ լայն մասսայականություն են վայելում ընթերցողների շրջանում:

Ետպատերազմյան Մ. գ. հարստացավ նաև մեկ ուրիշ՝ գիտաֆանտաստիկ ժանրով, որի հիմնադիրն է Աշոտ Շայբոնը («Սպիտակ ստվերների աշխարհում», 1951, «Գիշերային ծիածան», 1954, «Տիեզերական օվկիանոսի կապիտանները», 1955 ևն): Գիտաֆանտաստիկ ժանրով ինքնատիպ երկեր է ստեղծում Կ. Սիմոնյանը («Թափառող մոլորակը», 1961, «Ներսես Մաժան դեղագործը», 1974 ևն):

Վերջին տասնամյակների մեր մանկապատանեկան գրականության մեջ ճանաչված անուններ են դարձել Հ. Ղուկասյանը, Խ. Հրաչյանը, Հ. Սևանը, Ս. Մուրադյանը, Գ. Գաբրիելյանը, Պ. Խաչատրյանը, Ն. Միքայելյանը, Ս. Խարազյանը, Է. Ավագյանը, Լ. Միրիջանյանը, Ա. Շահինյանը և ուրիշներ: Նրանց ստեղծագործություններն աչքի են ընկնում մանկան հոգեկան աշխարհի հետաքրքրական դիտումներով, ժամանակակից հրատապ թեմաների մեկնաբանությամբ: Սովետահայ մանկապատանեկան գրականության լավագույն երկերի մեծ մասը թարգմանված է Սովետական Միության ժողովուրդների և արտասահմանյան բազմաթիվ լեզուներով:

*Գրկ.* Գյուլնազարյան Խ. Մ., Ակնարկներ հայ մանկական գրականության պատմությունից, Ե., 1961: Բալագյան Լ. Լ., Սովետահայ մանկապատանեկան գրականություն, Ե., 1969: Լալախանյան Ս. Գ., Հայ մանկական գրականության պատմության ուրվագծեր, Ե., 1973: Крупская Н. К., О детской литературе и детском чтении, М., 1954, Горький М., О детской литературе, 3 изд., М., 1968; Советские детские писатели. Библиографический словарь (1917—57), М., 1961; Советская детская литература, М., 1978. *Լ. Կարապետյան*

**ՄԱՆԿԱԿԱՆ ԵՎ ՊԱՏԱՆԵԿԱՆ ՀԱՆՐԱԳԻՏԱՐԱՆՆԵՐ**, գիտամասսայական տեղեկատու գրականություն՝ նախատեսված երեխաների և պատանիների ինքնակրթության ու դաստիարակության համար: Մ. և պ. հ. ընթերցողներին ծանոթացնում են շրջապատող աշխարհին, գիտական հիմնական դիսցիպլիններին, գիտության, տեխնիկայի, մշակույթի նվաճումներին, հայրենի երկրին, արտասահմանյան երկրներին: Ձևավորվել է Մ. և պ. հ-ի երկու հիմնական տեսակ՝ սիստեմատիկ և այբբենական-բառարանային. երբեմն երկու տեսակները զուգակցվում են:

Պատանեկան հանրագիտարանի նախատիպ է համարվել Յա. Ա. *Կոմենսկու* «Զննական աշխարհն նկարներով» (1658) գիրքը: Ռուսաստանում առաջին մանկական հանրագիտարանը՝ «Մանկական հանրագիտարան կամ Բոլոր գիտությունների նոր կրճատումներ»-ը, հրատարակվել է 1802-ին: Մինչհեղափոխական շրջանի լավագույնը համարվում է Ի. Դ. Սիտինի 10-հատորանոց «Մանկական հանրագիտարան»-ը (1913—14):

ՍՍՀՄ-ում հրատարակվել են սիստեմատիկ «Մանկական հանրագիտարան» (1 հրտ. 1958—62, հ. 1—10, 2 հրտ. 1964—1969, հ. 1—12), այբբենական-բառարանային հրատարակությունը՝ «Ինչ է, Ով է», հ. 1—3, 1978: Մ. և պ. հ. հրատարակվել են արտասահմանյան շատ երկրներում. առավել նշանավոր են. Մեծ Բրիտանիայում՝ «Օքսֆորդի պատանեկան հանրագիտարան»-ը («Oxford Junior Encyclopaedia», v. 1—13, Oxf., 1964), «Պատանեկան գիտական հանրագիտարան»-ը («Junior Science Encyclopaedia», v. 1—8, L., 1966), «Մանկական հանրագիտարան»-ը [«Բրիտանական հանրագիտարան» («Children's Britannica», v. 1—12, L., 1964), Հնդկաստանում՝ «Մանկական հանրագիտարան»-ը («Սաչիտրա Վիշվակոշ», հ. 1—10, Դելի, 1967, հինդի լեզվով), Իտալիայում՝ «Այբբենական հանրագիտարան տղաների և աղջիկների համար» («Enciclopedia alfabetica per ragazzi», v., 1—3, Milano, 1956), «Իտալացի երեխայի գանձը» («Il tesoro del ragazzo italiano», v. 1—8, Torino, 1968), ԱՄՆ-ում՝ «Գիտության նոր գիրք»: Մանկական հանրագիտարան («The New Book of Knowledge», The Children's Encyclopaedia, v. 1—20, N. Y., 1969), Ֆրանսիայում՝ Ռ. Գիյոյի «Լարուսի հանրագիտարանը երեխաների համար» (Guillot R., «Encyclopedie Larousse des enfants», P., 1956), «Հանրագիտարան երիտասարդության համար» («Encyclopedie pour la jeunesse», t. 1—4, P., 1958—62), ԳՖՀ-ում՝ «Մեյերի մանկական բառապաշար» («Meyers Kinderlexikon», Mannheim, 1960) ևն: Մ. և պ. հ. են հրատարակում նաև սոցիալիստական շատ երկրներ (ԳԴՀ, Չեխոսլովակիա, Հարավսլավիա):

**ՄԱՆԿԱԿԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆ**, մանուկների կատարման կամ նրանց ունկնդրման համար նախատեսված երաժշտությունը: Ընդգրկում է բազմազան ժանրեր՝ երգ, խմբերգ, կանտատ, գործիքային և նվագախմբային երկեր, օպերա, բալետ ևն: Մ. ե-յան լավագույն նմուշներին հատուկ է կերպարների գունեղությունն ու կոնկրետությունը, արտահայտչամիջոցների պարզությունն ու ձևակառուցման հստակությունը, բովանդակության անկաշկանդ զարգացումը: Ունի հնագույն ծագում՝ կապված ժող. երաժշտության հետ: Մ. ե-յան մեջ որոշակի կերպով առանձնանում են ստեղծագործական երկու ուղղություններ, որոնցից մեկը կապված է մանուկներին հասցեագրված, բայց պրոֆեսիոնալ կատարման համար գրված ստեղծագործությունների հետ, մյուսը կապված է մանկական կատարման հատկացված, նրանց տարիքային առանձնահատկություններն ու կատարողական հնարավորությունները նկատի առնող ստեղծագործությունների հետ: Մանուկների համար ստեղծագործություններ են գրել գրեթե բոլոր խոշորագույն դասականները՝ Յո. Ս. Բախ, Հայդն, Մոցարտ, Բեթհովեն, Շուման («Ալբոմ պատանեկության համար», «Մանկական տեսարաններ»), Բրամս («Մանկական ժողովրդական երգեր»), Բիզե («Մանկական խաղեր»), Չայկովսկի («Մանկական ալբոմ», երգեր), Մուսորգսկի («Մանկականը»), Դեբյուսի («Մանկական անկյուն»), Պրոկոֆև («Պետյան և գայլը», «Ձմեռային խարույկ», դաշնամուրային պիեսներ), Բարտոկ («Մանուկներին» դաշնամուրային պիեսները), որոնցից շատերը միաժամանակ հետապնդում են ուսուցողական նպատակներ: XX դ. Մ. ե-յան ասպարեզում առանձնակի նշանակություն են ստացել գերմանացի կոմպոզիտոր և մանկավարժ Կ. Օրֆի («Երաժշտություն մանուկների համար» ևն) և սովետական կոմպոզիտոր Դ. Կաբալևսկու (դաշնամուրային պիեսների ժողովածուներ, ջութակի, դաշնամուրի, թավջութակի կոնցերտներ նվագախմբի հետ, երգեր, խմբերգեր) գործունեությունը, որ ընդգրկում է նաև մանուկների երաժշտական դաստիարակության կարևորագույն մեթոդական հարցեր:

Հայաստանում Մ. ե. իր ուրույն նշանակությունն ունի: XIX դ. վերջին և XX դ. սկզբին այն հանդես եկավ իբրև ազգային պրոֆեսիոնալ երաժշտական դպրոցի ձևավորման և զարգացման ուղիներից մեկը: Կոմիտասը կարևոր նշանակություն էր տալիս Մ. ե-յանը՝ ստեղծելով ժող. երգերի մշակումների պարզեցված տարբերակներ՝ դրանք նախատեսելով պատանիների համար, նաև հորինում էր հատուկ մանկական երգեր: Նախասովետական շրջանում Մ. ե-յան ասպարեզում աշխատող հայ կոմպոզիտորներից շատերը նաև մանկավարժներ էին (տես *«Երաժշտական լիգա»*): Նրանք ոչ միայն հորինում էին երգեր ու երաժշտական-թատերականացված կենդանի պատկերներ, այլև զբաղվում մանուկների երաժշտական դաստիարակության գործնական խնդիրներով: Կոմպոզիտորները զգալիորեն ընդլայնեցին Մ. ե-յան շրջանակները, հարստացրին այն նոր կերպարներով, նոր բովանդակությամբ և երաժշտա-արտահայտչական միջոցներով, մասնավորապես թատերականացված երաժշտության նոր ձևերով:

Մ. ե-յան ասպարեզում նշանակալից ավանդ են ներդրել Ռ. Մելիքյանը, Ա. Մանուկյանը, Կ. Զաքարյանը, Մ. Մազմանյանը, Մ. Միրզոյանը, Ա. Մայիսյանը, Ս. Բարխուդարյանը, Դ. Ղազարյանը, Հ. Ստեփանյանը, Վ. Տալյանը, Ա. Խաչատրյանը, Վ. Արարատյանը, Ս. Գաւիկյանը, Ս. Ջրբաշյանը: Ներկայումս ստեղծագործող կոմպոզիտորների մեծ մասը այս կամ այն չափով անդրադառնում է Մ. ե-յան տարբեր ժանրերին: Առանձնապես նշանակալից են Գ. Չթչյանի, Ա. Օհանյանի, Ա. Լուսինյանի, Է. Միրանյանի ստեղծագործությունները:

*Ս. Ամատունի*

**ՄԱՆԿԱԿԱՆ ԵՐԿԱԹՈՒՂԻ**, արտադպրոցական հիմնարկ, որը ղեկավարում է երկաթգծի վարչության ուսումնական հիմնարկների բաժինը: Մ. ե. օժանդակում է դպրոցի ուսումնա-դաստիարակչական աշխատանքին, նպաստում սովորողների տեխ. ստեղծագործության զարգացմանը և մասնագիտական կողմնորոշմանը: Երևանի Մ. ե. առաջիններից է, կառուցվել է 1936-ին: Մ. ե-ներ են կառուցվել նաև Թիֆլիսում (1935), Դնեպրոպետրովսկում (1936): 1937—40-ին շահագործման են հանձնվել Կրասնոյարսկի, Մոսկվայի, Գորկու, Իրկուտսկի, Դոնի Ռոստովի, Խարկովի, հետագայում նաև Լենինգրադի, Վոլգոգրադի, Չելյաբինսկի, Լվովի, Կիևի, Մինսկի, Ռիգայի, Խաբարովսկի են, 1972-ից՝ Լենինականի Մ. ե-ները: ՍՍՀՄ-ում գործում է ավելի քան 40 Մ. ե.: Դրանք տեղավորված են գեղատեսիլ վայրերում, քաղաքային զբոսայգիներում, լճափնյա այգիներում, զբոսափերին: Մ. ե-ների երկարությունը 1,5-ից մինչև 10—12 *կմ* է:

**ՄԱՆԿԱԿԱՆ ԷՔՍԿՈՒՐՍԻՈՆ-ՏՈՒՐԻՍՏԱԿԱՆ ԿԱՅԱՆ**, արտադպրոցական հիմնարկ սովորողների հետ տարվող էքսկուրսիոն-տուրիստական և հայրենագիտական աշխատանքի կազմակերպման ու հրահանգչա-մեթոդական կենտրոն: Աշխատում է ժողկրթության մարմինների ղեկավարությամբ, սերտ հարաբերության մեջ է կոմերիտական կոմիտեների, պիոներական կազմակերպության խորհուրդների, տուրիզմի գծով խորհուրդների հետ: Երեխաների հետ տարվող էքսկուրսիոն-տուրիստական աշխատանքի սովետական առաջին հիմնարկը՝ ՌՍՖՍՀ լուսժողկոմատին կից դպրոցական էքսկուրսիաների բյուրոն, ստեղծվել է Մոսկվայում, 1918-ին: Հետագայում վերափոխվել է լուսժողկոմատի Կենտրոնական փորձա-ցուցադրական էքսկուրսիոն բազայի, որի հիմքի վրա 1932-ին բացվել է առաջին կենտրոնական Մ. է-տ. կ. (այժմ՝ ՌՍՖՍՀ լուսավորության մինիստրության կենտրոնական Մ. է-տ. կ.): Սովետական իշխանության տարիներին Մ. է-տ. կ-ներ ստեղծվեցին բոլոր հանրապետություններում, մարզերում, երկրամասերում: Մ. է-տ. կ-ներում ու դրանց օժանդակությամբ դպրոցներում կազմակերպվում են տուրիստների, հայրենագետների, ճանապարհորդների խմբակներ, ակումբներ ու ընկերություններ, վարձույթային բազաներ ու տուրիստական հանդերձանքի կետեր: Մ. է-տ. կ-ի աշխատանքում կարևոր տեղ են գրավում տարբեր կազմակերպություններ, հիմնարկների, ձեռնարկությունների հանձնարարությամբ կազմակերպվող արշավներն ու էքսպեդիցիաները: Մ. է-տ. կ. մշակում է էքսկուրսիոն-տուրիստական աշխատանքի բովանդակության, ձևերի և մեթոդների հարցերը:

**ՄԱՆԿԱԿԱՆ ԹԱՏՐՈՆ**, 1. մանուկների ուժերով խաղացվող ներկայացումներ: Սկզբնավորվել է, այսպես կոչված, *դպրոցական թատրոնից*: Սովետական տարիներին մանկական ինքնագործունեության տեսակներից է, որ կազմակերպվում է պիոներների ու դպրոցականների պալատներում, դպրոցներում, ակումբներում են: 2. Մանուկների դաստիարակությանը ծառայող պրոֆեսիոնալ թատրոն (պատանի հանդիսատեսի թատրոն՝ ՊՀԹ): Ստեղծվել է սովետական պետության օրոք: Կազմավորվել է լուսավորության առաջին ժող. կոմիսար Ա. Վ. Լունաչարսկու միջամտությամբ. նա է գլխավորել Մանկական առաջին պետ. թատրոնի (Մոսկվա, 1920) դիրեկտորիան: Մ. թ-ի ամրապնդման և զարգացման համար մեծ ավանդ են ներդրել նրա առաջին գործիչներն ու ղեկավարները՝ Ա. Ա. Բրյանցևը, Ն. Ի. Սացը, Գ. Վ. Ռոշալը, Ա. Ա. Թաղաիշվիլին և ուրիշներ: 1920-ական թթ. թատրոններ ստեղծվել են Խարկովում (1920, այժմ՝ Մ. Գորկու անվ. ՊՀԹ Լվովում), Մոսկվայում՝ 1921-ին (այժմ՝ Կենտրոնական մանկական թատրոն) և 1924-ին (Պատանի հանդիսատեսի թատրոն), Լենինգրադում (Պատանի հանդիսատեսի թատրոն, 1922), Կիևում (1924), ՊՀԹ-ներ Թիֆլիսում՝ ռուսական (1927) և վրացական (1928), Գորկիում (1928), Բաքվում (1928), Երևանում (1929), Նովոսիբիրսկում (1930) և այլուր: 1930-ին արդեն կար 20 Մ. թ., որոնց ցանցն ամեն տարի ընդարձակվում էր. միաժամանակ աճում էր *տիկնիկային թատրոնների* թիվը: Մ. թ-ների խաղացանկը սկզբում կազմվել է հեքիաթների և մանկական ընթերցման համար նախատեսվող վիպակների բեմականացումներից: Կատարվել են նաև Մ. թ-ի բեմադրական առանձնահատկությունների որոնումներ՝ ձգտելով ներկայացման հատուկ զուսնեղության և սինթետիկության կամ օգտագործելով մանկական խաղի սկզբունքները: 1920-ական թթ. կեսերին ժամանակակից թեմայով գրվել են առաջին պիեսները մանուկների համար: Հերոսը սովետական պատանին էր, որի մարմնավորումը առաջին պլան մղեց բազմաթիվ երիտասարդ *տրավեստի*-դերասանուհիների: 1930-ական թթ. սկզբից սովետական դրամատուրգիան հիմնական տեղ գրավեց Մ. թ-ների խաղացանկում՝ նպաստելով դպրոցի և պիոներական կազմակերպության դաստիարակչական աշխատանքին: 1930-ական թթ. կեսերին վերջնականապես կազմավորվել են սովետական Մ. թ-ի գաղափարա-գեղարվեստական և մանկավարժական հիմնական սկզբունքները. փոքր տարիքի դպրոցականների համար մշակվել է հիմնականում թատերական հեքիաթի ժանրը, պատանիների համար՝ արկածային, պատմահեղափոխական պիեսներ, կատակերգություններ, ավելի խոր խնդիրներ առաջ քաշող ներկայացումները (այդ թվում դասականների գործերը) հասցեագրված են բարձր դասարանցիներին: Մ. թ. ունի մանկավարժական մաս, որ կապ է պահպանում դպրոցի հետ: Հայրենական մեծ պատերազմի տարիներին հատուկ նշանակություն է ստացել հայրենասիրության թեման: 1940-ական թթ. 2-րդ կեսին ներկայացումներում մեծ ուշադրություն է նվիրվել խաղաղության, պատանու բնավորության ձևավորման, նրա բարոյաքաղաքացիական ինքնագիտակցության ձևավորման հարցերին: ՍՍՀՄ-ում 1971-ին գործել է 46 դրամատիկական և մեկ երաժշտական Մ. թ.: Մանուկների համար ներկայացումներ են բեմադրվում նաև մեծահասակների թատրոններում: Սոցիալիստական մյուս երկրներում Մ. թ-ները լայնորեն օգտվում են սովետական թատրոնի փորձից, խաղացանկից, հովանավորվում են պետության կողմից, ունեն մշտական շենքեր: Կապիտալիստական երկրներում Մ. թ-ները մեծ մասամբ կիսապրոֆեսիոնալ շրջիկ կոլեկտիվներ են: 1965-ին ստեղծվել է մանուկների և պատանիների միջազգային ասոցիացիա (ԱՍՍԻՏԵԺ), որի նախագահը 1968-ից Կ. Յա. Շահ-Ազիզովն է (Մոսկվայի կենտրոնական մանկական թատրոնի ղեկավարը), գլխավոր քարտուղարը՝ Ռ. Մ. Բոդուենը (Ֆրանսիա):

Առաջին հայկական Մ. թ. ստեղծվել է Թիֆլիսում, 1927-ին (տես *Թբիլիսիի պատանի հանդիսատեսի հայկական թատրոն*): 1929-ին կազմակերպվել է *Երևանի պատանի հանդիսատեսի թատրոնը*, 1935-ին՝ *Լենինականի տիկնիկային թատրոնը* և *Երևանի տիկնիկային թատրոնը*, 1931—36-ին գործել է Լենինականի դրամատիկական թատրոնին կից պատանի հանդիսատեսի թատրոնը: Հայաստանի Մ. թ-ները յուրովի օգտվել են միութենական, հատկապես ռուսական նույնատիպ թատրոնների փորձից, խաղացանկից, գաղափարա-գեղարվեստական և մանկավարժական հիմնական սկզբունքներից, թարգմանական պիեսներին հաղորդել հայ մանկան, պատանու հոգեբանությունը, պատկերացումներին ու դաստիարակությանը համահունչ երանգներ, որոնել ազգային Մ. թ-ին բնորոշ արտահայտչամիջոցներ: Հայկ. Մ. թ-ները նոր սերնդի դաստիարակման, ապագա քաղաքացու գաղափարա-բարոյական կերպարի կազմավորմանն օժանդակող կարևոր մշակութային օջախներ են: Մանուկների համար ներկայացումներ են բեմադրում նաև Երևանի Սպենդիարյանի անվ. օպերայի և բալետի, Սունդուկյանի անվ., Ստանիսլավսկու անվ. ռուսական, Լենինականի դրամատիկական թատրոնները: Հայկ. Մ. թ-ի զարգացմանը մեծապես նպաստել են ռեժիսորներ Ա. Բուրջալյանը, Տ. Շամիրխանյանը, Ա. Աբարյանը, Ս. Քափանակյանը, Ա. Աղասյանը, Ս. Քոչարյանը, Հ. Ղափլանյանը, Զ. Տատինցյանը, բեմանկարիչ Գ. Վարդանյանը, դերասան-դերասանուհիներ Ն. Մանուչարյանը, Վ. Միրզոյանը, Պ. Սանթրոսյանը, Պ. Գևորգյանը, Ա. Ղազարյանը, Վ. Ամիրբեկյանը, Բ. Մուրադյանը, Է. Ամիրբեկյանը, Է. Վարդանյանը, Է. Էլբակյանը, Ի. Ղա-

րիբյանը, շնորհալի տրավեստի-դերասանուհի Մ. Թամրազյանը, Գ. Ստամբուլցյանը, Մ. Սիմոնյանը, Ն. Դալլաքյանը, Ջ. Տեր-Կարապետյանը, Ն. Չալիկյանը, Խ. Նազարեթյանը, Ի. Մկրտչյանը և ուրիշներ:

Գրկ. Ավագյան Խ., Երևանի պատանի հանդիսատեսի թատրոն, 1929—1970, Ե., 1973: Шпет Л., Советский театр для детей. Страницы истории, М. 1971.

**ՄԱՆԿԱԿԱՆ ԽԱՂԵՐ**, երեխաների ակտիվ գործունեության տեսակ, որը սովորաբար շրջապատող աշխարհի, մեծերի գործողությունների և փոխհարաբերությունների ընդօրինակում է: Մ. խ. իրենց ծագումով, բնույթով և բովանդակությամբ սոցիալական են, կրում են ազգային, ժող. բնույթ և փոխանցվում սերնդե սերունդ: Դրանցում ձևավորվում և դրսևորվում է աշխարհը ճանաչելու, նրա վրա ներգործելու երեխայի պահանջը, զարգանում են նրա կամային, ֆիզիկական հատկությունները:

Մանկավարժության մեջ տարբերում են մանիպուլացված (մինչև 3 տարեկանների), սյուժետային (դերային, թատերականացված, բեմականացված), շարժական և դիդակտիկ Մ. խ.: Մսուրային տարիքի երեխաներին խաղի ընթացքում սովորեցնում են առարկաներով գործողություններ կատարել, ծանոթացնում են դրանց ձևին, գույնին, նշանակությանը ևն: Նախադպրոցականների սյուժետային խաղերի համար հաճախ փոքրածավալ թեմաներ են ընտրվում գեղարվեստական գրքերից, ռադիո- և հեռուստատեսային հաղորդումներից, մանկական ու ժող. հեքիաթներից: Խաղն սկսվում է դերերի բաշխումով: Երեխաներին տրվում է կենդանու, մեքենայի, ծառի և այլ իրի դեր, խաղի մեջ են մտնում նաև կենցաղային առարկաներ, խաղալիքներ, գործիքներ: Խաղային իրադրությունը նպաստում է երեխաների գիտելիքների, մտածողության ու երևակայության զարգացմանը: Թատերականացված խաղերում երեխաները սովորաբար դերերը բաշխում են խաղալիքների միջև և գործում նրանց փոխարեն:

Բեմականացված խաղերում նախադպրոցական և դպրոցական ցածր տարիքի երեխաները թատերականացված ձևով վերարտադրում են գրական ստեղծագործությունների բովանդակությունը: Երեխաներին դերի հետ միասին տրվում են խաղալիքներ, օգտագործվում է նաև տիկնիկային թատրոնը: Մի շարք խաղեր ունեն կանոններ: 4—5 տարեկանները, խաղալով, մրցում են վազքում, թռիչքում ևն ձևերում: 5—6 տարեկանների մոտ շարժուն խաղերը ստանում են մարզական բնույթ (տես *Ֆիզիկական դաստիարակություն*, *Սպորտային խաղեր*):

Երեխաների, մանավանդ նախադպրոցականների մտավոր դաստիարակության գործուն միջոցներից են դիդակտիկ խաղերը, որոնց նպատակն է նոր գիտելիքներ հաղորդել առարկաների, նրանց դասակարգման, նշանակության, հատկությունների, աշխատանքի տեսակների, բնության երևույթների ևնի մասին: Լայն տարածում ունեն առանց խաղալիքի, բանավոր Մ. խ.՝ հանելուկները, վանկախաղերը ևն:

Հաճախ դիդակտիկ Մ. խ. կրում են ճանաչողական-մարզական խաղ-վարժությունների և խաղ-մրցույթների բնույթ:

Համամիութենական են «Կաշվե գնդակ» և «Ոսկե տափօղակ» մրցանակային խաղերը, դպրոցականների սպարտակիադաները, ռադիո- և հեռուստավիկտորինաները ևն: Տես նաև *Խաղալիք*:

**ՄԱՆԿԱԿԱՆ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, հիվանդությունների խումբ, որոնք հանդիպում են առավելապես կամ բացառապես մանկական տարիքում և պայմանավորված են երեխայի օրգանիզմի անատոմիաֆիզիոլոգիական առանձնահատկություններով: Ըստ ծագման և կլինիկական արտահայտության տարբերում են աճման ու զարգացման հիվանդություններ, մանկան օրգանիզմի ու արտաքին պայմանների կապի խախտման հիվանդություններ, մանկական վարակիչ հիվանդություններ: Աճման ու զարգացման որոշ հիվանդություններ (էմբրիոֆետոպաթիաներ) սկսվում են դեռևս ներարգանդային կյանքում՝ զանազան բացասական ազդեցություններից (վիրուսային հիվանդություններ, քրոմոսոմային շեղումներ, խոնացնող ճառագայթներ ևն): Որոշ հիվանդությունների առաջացման մեխանիզմում դեր են խաղում ժառանգական գործոնները (հայտնի են հարյուրից ավելի ժառանգական հիվանդություններ ու ախտանշախմբեր, որոնք արձանագրվում են միայն մանուկների մոտ): Այդ հիվանդությունների ժամանակին հայտնաբերման և արդյունավետ բուժման նպատակով ՍՍՀՄ խոշոր քաղաքներում կազմակերպվում են բժշկա-գենետիկական կոնսուլտացիաներ: Աճման ու զարգացման հիվանդություններից են նաև ռախիտը, թերսնուցումները (հիպոտրոֆիաներ), մարսողական օրգանների անկանոնությունները, բնածին արատները ևն: Մանկան օրգանիզմի ու արտաքին միջավայրի կապի խախտման հիվանդությունները (ծննդաբերական վնասվածքներ, հիպօքսիաներ, հեմոլիտիկ հիվանդություններ, էքսուդատիվ դիաթեզ, թոքերի բորբոքումներ, մարսողության սուր խանգարումներ ևն) հիմնականում պայմանավորված են *հոմեոստազի* ապահովող ֆիզիոլոգիական մեխանիզմների թերզարգացմամբ: Մանկական վարակիչ հիվանդություններն ունեն յուրահատուկ հարուցիչներ, վարակվում են օդա-կաթիլային, շփման, սննդային և այլ ճանապարհներով: Առավել տարածված են օդա-կաթիլային (*կարմրուկ*, զրիզ, *կապույտ հազ*, *խոզուկ*, *ջրծաղիկ*, *քութեշ*) և աղիքային (*դիզենտերիա*, *սալմոնելոզ*, որովայնային տիֆ) վարակիչ հիվանդությունները:

Մ. հ. ուսումնասիրում են *մանկաբուժությունը*, ինչպես նաև հարակից մի շարք գիտություններ (մանկաբարձություն, մանկական վիրաբուժություն, ֆիզիոլոգիա, ախտաբանական ֆիզիոլոգիա, կլինիկական կենսաքիմիա և կլինիկական մորֆոլոգիա):

Կանխարգելումը. պտղի նախածննդյան պահպանություն, ծննդաբերական վնասվածքների կանխում, նորածինների խնամք, սննդի ռեժիմի կարգավորում, պայքար վարակիչ հիվանդությունների դեմ (տուբերկուլոզի, ծաղկի, դիֆթերիայի, կարմրուկի կանխարգելիչ պատվաստումներ), երեխայի բնականոն ֆիզիկական զարգացման ապահովում (ֆիզկուլտուրա, սպորտ, օրգանիզմի կոփում վաղ մանկական տարիքից):

Գրկ. Աստվածատրյան Վ. Ա., Մանկական հիվանդություններ, Ե., 1975: Նույնի, Առողջ մանուկ, Ե., 1979: Իբոյան Ս. Ռ., Մինչև մեկ տարեկան երեխաների թոքերի բորբոքումները, Ե., 1976: Նույնի, Առողջ երեխաների սնուցում, Ե., 1976: Սփոք Բ., Երեխան և նրա խնամքը, Ե., 1977:

*Ս. Իբոյան*

**ՄԱՆԿԱԿԱՆ ՄԱՀԱՑՈՒԹՅՈՒՆ**, երեխաների մահացության թիվը կյանքի առաջին տարում: Բնակչության բնական աճի վիճակագրական ցուցանիշ է. արտահայտվում է մահացած երեխաների թվով (100 կամ 1000 ողջ ծնվածներից): Մ. մ. հիմնականում կախված է սոցիալ-տնտեսական պատճառներից: Մ. մ-յանը նպաստող գործոններն են՝ վաղաժամ ծննդաբերությունը (անհաս երեխաների մահացությունը 15—20 անգամ ավելի է), նորածինների կրած հիվանդությունները, մոր տարիքը, առողջական վիճակը հղիության և ծննդաբերության ժամանակ, ընտանիքի սանիտարական կուլտուրայի, կանանց և երեխաներին սպասարկող բժշկ. ծառայության ցածր մակարդակը: ՍՍՀՄ-ում Մ. մ. խիստ նվազել է *մայրության և մանկության պահպանության* և *պտղի նախածննդյան պահպանության* համակարգերի միջոցառումների շնորհիվ: ՍՍՀՄ-ում ողջ ծնված է համարվում այն երեխան, որը թեկուզ մեկ անգամ շնչել է: Կապիտալիստական որոշ երկրներում երեխաների մահը՝ մինչև ծննդի գրանցումը, համարում են մեռածծնություն, որի պատճառով էլ Մ. մ-յան ցուցանիշն այդ երկրներում չի համապատասխանում իրականությանը:

**ՄԱՆԿԱԿԱՆ ՄԱՄՈՒԼ**, պարբերական հրատարակություններ՝ նախադպրոցական, կրտսեր, միջին ու բարձր տարիքի դպրոցական երեխաների համար: Ռուսաստանում առաջին մանկական ամսագիրը հիմնել է Ն. Ի. Նովիկովը՝ «Դետսկոյե չտենիե դլյա սերդցա ի ռազումա» («Детское чтение для сердца и разума», 1785—1809): Այդ տարիներից մինչև 1917-ի հոկտեմբերը Ռուսաստանում լույս է տեսել ավելի քան 100 մանկապատանեկան ամսագիր: Դրանցից էին «Նովայա բիբլիոտեկա դլյա վոսպիտանիյա» («Новая библиотека для воспитания», 1848—49), «Պոդսնեժնիկ» («Подснежник», 1858—62), «Ռոդնիկ» («Родник», 1882—1917), «Զոլոտոյե դետստվո» («Золотое детство», 1907—1917), «Մայակ» («Маяк», 1909—18) ևն: Սովետական առաջին մանկական ամսագիրը՝ «Սեվերնոյե սիյանիե»-ն («Северное сияние», 1919—20), հիմնադրել է Մ. Գորկին: Պիոներական կազմակերպություն ստեղծվելուց հետո լույս տեսան «Բարաբան» («Барабан», 1923—26), «Պիոներ» («Пионер», 1924-ից), «Չիժ» («Чиж», 1930—41) և այլ ամսագրեր: Մեծ մասսայականություն են վայելում «Պիոներսկայա պրավդա» («Пионерская правда»,

1925-ից) թերթը, «Վեսյոլիե կարտինկի» («Весёлые картинки»), «Մուրզիլկա» («Мурзилка»), «Կոստյոր» («Костер»), «Յունի տեխնիկ» («Юный техник») ամսագրերը: Արտասահմանյան առաջին մանկական պարբերականներից են «Լայպցիգեր վոխենբլաթ»-ը («Leipziger Wochenblatt», 1772—74), «Բոյզ օուն փեյփը» («Boy's Own Paper», 1879-ից) և այլ հրատարակություններ:

Սոցիալիստական երկրներում երեխաների դաստիարակության գործում կարևոր դեր են կատարում «Դրուժինկա»-ն («Дружинка», 1949-ից, Բուլղարիա), «ԱԲՑ պիոնիերով»-ը («ABC pionierov», 1960-ից, Չեխոսլովակիա), «Բումմի»-ն («Bummi», 1957-ից, ԳԴՀ) ևն:

Հայկ. առաջին մանկական հրատարակություններ են «Բուրաստան Սուրբ Սահակյան»-ը (1851—55, Կ. Պոլիս) և «Թութակ Հայկազյան»-ը (1854—55, Զմյուռնիա): XIX դ. վերջին քառորդում Կ. Պոլսում լույս են տեսել «Երկրագունդ»-ը (1870—71), «Ավետաբեր տղայոց համար»-ը (1872—78), «Բուրաստան մանկանց»-ը (1882—93), «Թատրոն բարեկամ մանկանց»-ը (1876—78): Նշանակալի էր «*Աղբյուր*»-ի (1883—1918, Թիֆլիս) գործունեությունը, որը, ելակետ ընդունելով Խ. Աբովյանի և Մ. Նալբանդյանի դաստիարակչական սկզբունքները, նպաստեց հայ մանկական ռեալիստական գրականության զարգացմանը: Տարբեր ժամանակներում շուրջ երկու տասնյակ այլ պարբերականներ են լույս տեսել Թիֆլիսում, Լոնդոնում, Ալեքսանդրիայում, Բուխարեստում, Փարիզում, Թեհրանում, Հալեպում և այլ քաղաքներում: Սովետահայ առաջին մանկական հրատարակությունը «Պատկոմ»-ն էր (1923—24), որին փոխարինեց «*Պիոներ*»-ը (1925-ից): 1923—41-ին հրատարակվել է «Կարմիր ծիլեր»-ը, 1925-ից լույս է տեսնում «*Պիոներ կանչ*» թերթը, 1978-ից՝ «*Ծիծեռնակ*»-ը:

Գրկ. Գ յ ու լ ն ա զ ա ր յ ա ն Խ. Մ., Ակնարկներ հայ մանկական գրականության պատմությունից, Ե., 1961: Ն ա զ ա ր յ ա ն Ս., Հայ մանկա-պատանեկան մամուլը (1861—1917), Ե., 1979: *Ս. Նազարյան*

**ՄԱՆԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀ ՀԱՅԱՍՏԱՆԻ** Ե ր և ա ն ու մ, մանկական ստեղծագործության պատկերասրահ: Հիմնվել է 1970 թվականին՝ Երևանում, արվեստաբաններ Հ. Իգիթյանի և Ժ. Աղամիրյանի (1936—1975, եղել է առաջին դիրեկտորը) նախաձեռնությամբ: Թանգարանի էքսպոզիցիայի հիմք է հանդիսացել 1968-ին Երևանի նկարչի տանը կազմակերպված «Աշխարհը երեխաների աչքերով» մանկական ստեղծագործությունների ցուցահանդեսը: Մ. պ. Հ. ունի մշտական էքսպոզիցիա և ցուցասրահ, որտեղ կազմակերպվում են անհատական և թեմատիկ ցուցահանդեսներ: Այն սերտ կապեր ունի հանրապետության միջնակարգ և գեղարվեստական դաստիարակության թեքումով դպրոցների, պիոներական պալատների նկարչական խմբակների հետ: Մ. պ. Հ. աշխատանքներ է ստանում Սովետական Միության հանրապետություններից, աշխարհի տարբեր երկրներից, կատարում փոխանակումներ: 1975-ին Անգլիայի պրեմիեր մինիստր Հարոլդ Վիլսոնը պատկերասրահին է նվիրաբերել անգլիացի երեխաների 150 աշխատանք: Այժմ Մ. պ. Հ. ֆոնդերում կան մոտ 100 հզ. մանկական ստեղծագործություններ (գեղանկար, քանդակ, գրաֆիկա, խեցեգործություն, ապլիկացիա, գորգ, կարպետ, ձեռագործ), այդ թվում՝ աշխարհի 90 երկրներից: Նրա ֆոնդերից աշխատանքներ են ուղարկվել ԱՄՆ-ում, Ֆրանսիայում, Իտալիայում, Չեխոսլովակիայում կազմակերպված ցուցահանդեսներին: Ամեն տարի մայիսի 20-ին Ալ. Սպենդիարյանի անվ. օպերայի և բալետի թատրոնի ասֆալտապատ հրապարակում կազմակերպվում է մրցույթ՝ «Երեխաները նկարում են ասֆալտի վրա», իսկ երեխաների պաշտպանության միջազգային օրը՝ հունիսի մեկին՝ միջազգային մեծ ցուցահանդես: Մ. պ. Հ. դերին և մատաղ սերնդի գեղագիտական դաստիարակությանն է նվիրված Ժ. Աղամիրյանի «Հայաստանի մանկական պատկերասրահը» (1980, Մոսկվա, ռուս.) աշխատությունը: 1962-ին Մ. պ. Հ-ին շնորհվել է ՀԼԿԵՄ Կենտկոմի դափնեկրի կոչում: 1980-ին Գ ե ղ ա գ ի տ ա կ ա ն դ ա ս տ ի ա ր ա կ ու թ յ ա ն կ ե ն տ ր ո ն ի համալիրի հիմնադրումով Մ. պ. Հ. վերածվել է Հայաստանի մանկական ստեղծագործության թանգարանի (մասնաճյուղեր ունի Ախուրյանում, Լենինականում, Կիրովականում): Համալիրն ունի մանկական արվեստի ակադեմիա, ֆիլհարմոնիա, թատրոն, կինոստուդիա: Ակադեմիան բաղկացած է կերպարվեստի ստուդիաներից՝ գեղանկարչության, գրաֆիկայի, քանդակագործության, խեցեգործության, փայտի և քարի փորագրության: Մանկական ֆիլհարմոնիայում գործում են սիմֆոնիկ, կամերային, ազգագրական, էստրադային անսամբլներ: Թատրոնում երեխաները ինքնուրույն բեմադրություններ են կատարում, խաղում դերեր: Կինոստուդիայում նկարահանվում են վավերագրական ու գեղարվեստական ֆիլմեր: *Գ. Նալբանդյան*

**ՄԱՆԿԱԿԱՆ ՊՈԼԻԿԼԻՆԻԿԱ**, ՍՍՀՄ-ում պետական բուժ-կանխարգելիչ հիմնարկություն. մանկական հիվանդանոցի ենթաբաժինը կամ բժշկական ինքնուրույն հիմնարկ: Կազմակերպում է երեխաների արտահիվանդանոցային բուժօգնությունը (նորածիններից մինչև 14 տարեկանը ներառյալ), ապահովում երեխաների առողջության, ֆիզիկական, նյարդա-հոգեկան զարգացման դիսպանսերային հսկողությունը, երեխաների և ծնողների սան-հիգիենային դաստիարակությունը: Ինքնուրույն Մ. պ-ներն ունեն մանկաբուժական հիմնական բաժանմունքներ, մասնագիտացված (մանկական վիրաբուժության, քիթ-կոկորդ-ականջի, աչքի, երիկամային հիվանդությունների), ախտորոշիչ, բուժական ֆիզկուլտուրայի և մերսումների կաբինետներ: Խոշոր քաղաքներում գոյություն ունեն կոնսուլտացիոն Մ. պ-ներ, ուր գործում են միջշրջանային մասնագիտացված (մանկական ուրոլոգիայի, ալերգոլոգիայի ևն) կաբինետներ: Տես նաև *Պատրոնաժ*, *Մանկաբուժություն*:

**ՄԱՆԿԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ**, ստեղծագործության պրոցեսում զարգանում է երեխայի բանականությունն ու հուզականությունը, նա կարողանում է ճանաչել կյանքն ու որոշել իր տեղը, ձեռք է բերում կոլեկտիվ աշխատանքի փորձ, տարբեր նյութերով ու գործիքներով աշխատելու հմտություն, ինքնատիրապետում: Սոցիալիզմի պայմաններում Մ. ս. զարգացնում է կոմունիզմի ապագա կառուցողների ստեղծագործական կարողությունները, ինչպես նաև նյութ տալիս երեխաների տարիքային առանձնահատկությունների ու անձի ձևավորման օրինաչափություններն ուսումնասիրելու համար:

Տ ե խ ն ի կ ա կ ա ն Մ. ս. պոլիտեխնիկական կրթության ու մասնագիտական կողմնորոշման կարևոր միջոցներից է: Նպաստում է տեխնիկայի հանդեպ երեխայի կայուն հետաքրքրության ձևավորմանը, նորարարական ու գյուտարարական հակումների, մտածողության զարգացմանը, խթանում կրթության գիտական մակարդակի բարձրացմանը: Տեխնիկական Մ. ս. ավելի շատ իրականացվում է արտադասարանական պարապմունքներում և դրսևորվում է մոդելներ, սարքեր, մեխանիզմներ, ոչ բարդ մեքենաներ նախագծելու և պատրաստելու ընթացքում: 1924-ին առաջին անգամ Մոսկվայում անցկացվեց ավիամոդելիստ դպրոցականների մրցույթ: Տուլայում բացվեց երկրում առաջին տեխնիկական Մ. ս-յան ցուցահանդեսը: 1926-ին Մոսկվայում հիմնադրվեց առաջին մանկական տեխ. կայանը՝ ՄՏԿ (այժմ՝ ՌՍՖՍՀ-ի պատանի տեխնիկների կենտրոնական կայան): 1920—30-ական թթ. վերջին ՄՏԿ-ներ են կազմակերպվել երկրի շատ քաղաքներում: 1939-ին ՍՍՀՄ պատանի տեխնիկների աշխատանքները ցուցադրվել են Նյու Յորքի համաշխարհային, 1941-ին՝ Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսներում: Հայրենական պատերազմի տարիներին (1941—45) պատանի տեխնիկները մասնակցել են գյուղատնտեսական մեքենաների և սարքավորումների պատրաստման, վերապատրաստման, զինվորական հիվանդանոցների ռադիոֆիկացման ևն աշխատանքների: 1967-ից ՍՍՀՄ-ում անց է կացվում երիտասարդության տեխ. ստեղծագործության ստուգատես (ԵՏՍՍ): Տեխնիկական Մ. ս-յան բնագավառի լավագույն աշխատանքները ցուցադրվում են ՍՍՀՄ ժողտնտեսության նվաճումների ցուցահանդեսում: Տեխ. Մ. ս-յան ամենամյա ցուցահանդեսներ են անցկացվում բոլոր միութենական հանրապետություններում, մարզերում և շրջաններում: 1968-ից շարունակաբար անց են կացվում հրթիռամոդելիստ դպրոցականների համամիութենական մրցումներ: Տեխ. Մ. ս-յան խմբակներում են իրենց գործունեությունը սկսել ակադեմիկոս Բ. Ե. Պատոնը, ավիակոնստրուկտորներ Ս. Վ. Իլյուշինը, Ա. Ս. Յակովլևը, Օ. Կ. Անտոնովը, օդաչու-տիեզերագնացներ Գ. Ս. Տիտովը, Ա. Վ. Ֆիլիպչենկոն և ուրիշներ:

Տեխ. Մ. ս-յան հիմնական սովետական հանդեսներ են «Մոդելիստ-կոնստրուկտոր»-ը («Моделист-конструктор», 1966-ից) և «Յունի տեխնիկ» («Юный техник», 1956-ից):

Տեխ. Մ. ս. հաջողությամբ զարգանում է նաև սոցիալիստական մյուս երկրներում: ԲԺՀ-ում և ԳԴՀ-ում նախապատվությունը տրվում է էլեկտրոնային տեխնիկայի, տեխ. կիբեռնետիկայի, մեքենաշինության ու հաստոցաշինության ուսուցմանը, Հունգարիայում, Լեհաստանում, Չեխոսլովակիայում, Ռումինիայում, Հարավսլավիայում՝ մոդելիզմին: Տեխ. Մ. ս. զարգացած է նաև կապիտալիստական մի շարք երկրներում (Մեծ Բրիտանիա, ԱՄՆ, Ֆրանսիա, Ֆինլանդիա, Շվեյցարիա):

Գեղարվեստական Մ. ս.: Երեխայի ստեղծագործական գործունեությունը արվեստի բնագավառում դրսևորվում է իմպրովիզացիաների (պատմվածքներ, բանաստեղծություններ, մեղեդիներ, պարային շարժումներ, խաղեր ևն) ձևով: Մ. ս. արվեստի բնագավառում նպաստում է երեխայի գեղագիտական ճաշակի դաստիարակությանը և գեղարվեստական կրթությանը (տես *Գեղագիտական դաստիարակություն*):

Կերպարվեստի Մ. ս. երեխայի համար ամենամասսայականն է: Երեխան իր ճանաչած առարկան, որպես կանոն, սկսում է պատկերել 3—4 տարեկանից: Նրա պատկերածը տեսանելի է և գործուն: Ավելի ուշ շրջանի մանկական նկարը խաղային թեքում և բովանդակություն ունեցող գծանկարչական պատմվածք է:

Գրական Մ. ս-յան տարրերը երեխայի մոտ դրսևորվում են մայրենի լեզվին տիրապետելուց հետո: Տարեցտարի երեխայի գրական ստեղծագործությունը դառնում է էլ ավելի նպատակասլաց, երեխան սկսում է հասկանալ գրական ստեղծագործությունների հասարակական արժեքը, դրանց ստեղծումը դառնում է նրա ստեղծագործական պրոցեսի նպատակը, որոշակիորեն դրսևորվում են հակումները գրական տարբեր ժանրերի նկատմամբ:

Երաժշտության բնագավառում Մ. ս. դիտվում է որպես երաժշտական դաստիարակության մեթոդ: Երաժշտական Մ. ս-յան պրոբլեմները լայնորեն ուսումնասիրվել են ՍՍՀՄ ՄԳԱ նախադպրոցական դաստիարակության ինստ-ում: 1960-ից մեծ տարածում են գտել ֆոտոկինոսիրողների խմբերը: Ստեղծվել են ակումբներ, լաբորատորիաներ և այլ հիմնարկներ:

1930-ական թթ. սկզբին երեխաների գեղագիտական դաստիարակության և գեղարվեստական Մ. ս-յան զարգացման նպատակով ՍՍՀՄ մարզային, երկրամասային և հանրապետական կենտրոններում ստեղծվել են գեղ. դաստիարակության տներ, գիտամեթոդական հատուկ հիմնարկներ: 1952-ին գեղ. դաստիարակության տները միացվել են պիոներների և դպրոցականների պալատներին ու տներին: Մ. ս-յան ուսումնասիրմամբ զբաղվում են ՍՍՀՄ ՄԳԱ գիտահետազոտական ինստ-ները: Մանկական գեղ. ստեղծագործության թանգարանային հավաքածուներ կան Լենինգրադում, Կիևում, Երևանում: Այդպիսի խոշոր կենտրոններ են ստեղծվել Հնդկաստանում (Դելի), Հարավսլավիայում (Նովի Սադ), Ֆրանսիայում (Սևր), Իտալիայում (Ֆլորենցիա), ԱՄՆ-ում (Նյու Յորք) և այլուր:

Պատկերազարդումը տես 225-րդ էջից առաջ՝ ներդիրում:

**ՄԱՆԿԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿԱՅԱՆ**, տես *Պատանի տեխնիկների կայան*:

**ՄԱՆԿԱՀԱՎԱՔ**, մանկաժողով, օսմանյան Թուրքիայում հպատակ քրիստոնյա երեխաների բռնի հավաքագրումը՝ *ենիչերիների* շարքերը համալրելու նպատակով: Մ-ի սկիզբ է համարվում Մուրադ I սուլթանի (1359—90) ժամանակաշրջանը: Նախապես կատարվել է 3 կամ 5 տարին մեկ անգամ, իսկ XVI դարից՝ յուրաքանչյուր տարի: Բալկանյան երկրներում Մ-ները ավելի վաղ են կատարվել, քան Հայաստանում (1464-ից), ուր Մ-ներ համեմատաբար քիչ են եղել, քանի որ թուրք. կառավարությունն ի դեմս քրդական ցեղերի, այնտեղ ուներ հենարան:

Մ. ազգային ու սոցիալական ճնշման դրսևորումներից էր և նպատակ ուներ ջլատել քրիստոնյաների դիմադրական ուժը, դյուրացնել նրանց ձուլումը:

*Գրկ.* Զուլալյան Մ. Կ., «Դևշիրմե»-ն (մանկահավաքը) օսմանյան կայսրության մեջ ըստ թուրքական և հայկական աղբյուրների, «ՊԲՀ», 1959, № 2—3:

**ՄԱՆԿԱՄՍՈՒՐ**, ՍՍՀՄ-ում 2 ամսականից մինչև 3 տարեկան երեխաների նախադպրոցական դաստիարակության հիմնարկություն՝ առողջապահության մինիստրության համակարգում: Մոր և մանկան պահպանության ապահովման կարևոր օղակ է, միջոցառումներ է իրականացնում երեխաների առողջության ապահովման, նրանց հոգեկան ու ֆիզիկական զարգացման ուղղությամբ: 1959-ին ՍՍՀՄ-ում ըստեղծվել է մսուր-մանկապարտեզների միասնական համակարգ, որի պահպանության ծախսերը հիմնականում հոգում է պետությունը:

1979-ին ՍՍՀՄ-ում կար 80 հզ. (10 մլն 420 հզ. երեխա), ՀՍՍՀ-ում՝ 1061 (մոտ 130 հզ. երեխա) մսուր-մանկապարտեզ: Միայն Մ-ների թիվը ՍՍՀՄ-ում 12 հզ. 800 է (912 հզ. երեխա): Մ-ում երեխաները բաժանվում են չորս խմբի. մինչև 9 ամսական (կրծքի երեխաներ), 9—14 ամսական (չորեքթաթ գնացողներ), 14—24 ամսական (միջին) և 2—3 տարեկան (ավագ), որոնցից յուրաքանչյուրի համար սահմանված է համապատասխան ռեժիմ ու բժշկ. հսկողություն: Մ-ների լայն ցանց կա նաև կոլտնտեսություններում (մասամբ՝ սեզոնային): Սոցիալիստական երկրների մեծ մասում Մ-ներ ստեղծվում են նույն սկզբունքներով, ինչպես ՍՍՀՄ-ում: Կապիտալիստական որոշ երկրների մանկական հիմնարկներում պահվում են նաև մսուրային հասակի երեխաներ (տես նաև *Մանկապարտեզ*):

**ՄԱՆԿԱՆ ՀՈԳԵԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, երեխայի հոգեբանություն, հոգեբանության այն բաժինը, որն ուսումնասիրում է երեխայի հոգեկան զարգացման փաստերն ու օրինաչափությունները: Սերտորեն կապված է *մանկավարժության*, *մանկավարժական հոգեբանության*, հասակային մորֆոլոգիայի, *ֆիզիոլոգիայի*, հատկապես երեխայի *բարձրագույն նյարդային գործունեության* ֆիզիոլոգիայի հետ: Մ. հ-յան առարկա են. հոգեկան կառուցվածքի օնտոգենեզի պայմաններն ու շարժիչ ուժերը, առանձին հոգեկան պրոցեսները (կամային, հուզական, ճանաչողական), անձի որակների ձևավորումը, երեխաների տարիքային ու անհատական հոգեբանական առանձնահատկությունները, ինչպես նաև մանկան գործողության տարբեր ձևերը (խաղ, աշխատանք, ուսուցում): Առանցքային պրոբլեմներից են. կենսաբանական (հատկապես ժառանգական) և սոցիալ-մշակութային գործոնների փոխներգործության օրինաչափությունները, անձի զարգացման մեխանիզմների և ընթացքի վրա անհատական միկրոմիջավայրի ներգործելու հնարավորությունները ևն:

Այդ խնդիրների ուսումնասիրման մեթոդներից են անընդմեջ դիտումները, զրույցները, երեխայի աշխատանքային գործունեության (նկարչություն, ծեփակերտում, կոնստրուկտորական աշխատանք, գրական ստեղծագործություն) արդյունքների վերլուծությունը: Տարիքային զարգացումն ուսումնասիրելիս կիրառվում է ինչպես «լայնական կտրվածքի» (կարճատև փորձերի ու թեստերի օգնությամբ տարիքային զարգացման տվյալ աստիճանի առանձնահատկությունների և գոյացությունների բացահայտում), այնպես էլ «երկայնական» (տևական ժամանակաշրջանի ընթացքում) ուսումնասիրության մեթոդները:

Մ. հ., որպես գիտության ինքնուրույն բնագավառ, սկսեց զարգանալ XIX դ. 2-րդ կեսից՝ Դարվինի գաղափարների ազդեցությամբ, սակայն փորձարարական հետազոտությունները ծավալվեցին միայն XX դ.: Առաջին տասնամյակների ընթացքում, կուտակված փաստերի ընդհանրացման առումով, մեծ էին Վ. Շտեռնի, Կ. Բյուլերի, Կ. Կոֆկայի և Ա. Գեզելլի ծառայությունները: Հետագայում արտասահմանում առավել կանխակշիռ ներդրումներ կատարեցին Ժ. Պիաժեն, Բ. Ինհելդերը, Ա. Վալլոնը, Ջ. Բրուները, Ե. Էրիկսոնը, Թ. Բաուերը և ուրիշներ: Այդ հեղինակների հետազոտությունները, սակայն (որոշ բացառություններով), հենվում են *բիհևիորիզմի*, *ֆրեյդիզմի*, *պերսոնալիզմի*, գեշտալտիզմի (տես *Գեշտալտ հոգեբանություն*) և բուրժ. հոգեբանության այլ դպրոցների գաղափարների վրա:

ՍՍՀՄ-ում երեխայի հոգեբանության ուսումնասիրումը հիմնվում է դիալեկտիկական մատերիալիզմի, ռեֆլեկտորային ուսմունքի և սովետական հոգեբանության սկզբունքների վրա: Երեխայի զարգացման վերաբերյալ արժեքավոր մտքեր են հայտնել Կ. Դ. Ուշինսկին, Վ. Մ. Բեխտերևը, Ա. Ֆ. Լազուրսկին, Ա. Պ. Նեչաևը: Մարքսիստական դիրքորոշմամբ առաջին փորձնական ուսումնասիրությունները 20-ական թթ. կատարել են Կ. Ն. Կոռնիլովը, Պ. Պ. Բլոնսկին, Լ. Ս. Վիգոտսկին, Ա. Ռ. Լուրիան, Ա. Ն. Լեոնտևը և ուրիշներ: Լ. Ս. Վիգոտսկին առաջ քաշեց երեխայի հոգեկան զարգացման հասարակական-պատմական պայմանավորվածության գաղափարը, զարգացրեց երեխայի անձի ձևավորման գործում ուսուցման առաջատար դերի դրույթը, «զարգացման մոտակա զոնաների» գոյության գաղափարը: Սովետական հոգեբաններն ուսում-

նասիրում են ընկալման, հիշողության, մտածողության, խոսքի, գիտակցության, ինքնագիտակցության և անձի որակների վրա գործունեության տարբեր ձևերի ազդեցությունը (Բ. Գ. Անանև, Ա. Ա. Սմիռնով, Պ. Յա. Գալպերին, Դ. Բ. Էլկոնին, Ա. Վ. Զապորոժեց, Ն. Ա. Մենչինսկայա, Լ. Ի. Բոժովիչ և ուրիշներ): Խիստ հետաքրքրական են մտավոր գործողությունների փուլային ձևավորման վերաբերյալ Պ. Յա. Գալպերինի պատկերացումները: Սովետական մի խումբ հոգեբաններ (Վ. Վ. Դավիդով, Լ. Վ. Զանկով, Ա. Վ. Զապորոժեց, Դ. Բ. Էլկոնին) պարզեցին, որ նախադպրոցականների ու կրտսեր դպրոցականների հոգեֆիզիոլոգիական հնարավորությունները շատ ավելին են, քան ենթադրվում էր մինչև վերջերս: Այս հետևությունը հիմք ծառայեց դպրոցական ծրագրերը իմացական բովանդակությամբ հարստացնելու և տարրական դասարանների ուսուցիչներին ավելի բարձր պահանջներ առաջադրելու համար:

Ներկայումս ուշադրության կենտրոնում են ներհոգեկան հակասությունների, զարգացման շարժիչ ուժերի, օնտոգենեզի գերզգայուն փուլերի, աքսելերացիայի պատճառների ու դրսևորումների հարցերը: Սակայն երեխայի հոգեկան զարգացման շատ կողմեր դեռևս բավարար չափով լուսաբանված չեն:

Երեխայի հոգեբանության բնագավառում որոշ հետազոտություններ կատարվել են նաև Հայաստանում (Գ. Էդիլյան, Մ. Մազմանյան, Ե. Ալեքսանդրյան, Մ. Երիցյան և ուրիշներ): Տես նաև *Տարիքային հոգեբանություն*:

*Գրկ.* Տարիքային և մանկավարժական հոգեբանություն, Ե., 1977: Выготский Л. С., Развитие высших психических функций, М., 1960; Эльконин Д. Б., Детская психология (развитие ребенка от рождения до семи лет), М., 1960; Божович Л. И., Личность и ее формирование в детском возрасте, М., 1968; Пиаже Ж., Избр. психологические труды, пер. с франц., [М., 1969]; Брунер Дж., Психология познания, М., 1977; Принцип развития в психологии (сб.), М., 1978; Бауэр Т., Психическое развитие младенца, М., 1979. *Ա. Նալչաջյան*

**ՄԱՆԿԱ-ՊԱՏԱՆԵԿԱՆ ՄԱՐԶԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐ** ՍՍՀՄ-ում, արտադպրոցական հատուկ մարզական հիմնարկներ, որոնց գլխավոր նպատակը բարձրորակ պատանի մարզիկներ պատրաստելն ու նրանց ֆիզիկական դաստիարակությունն է, ինչպես և հասարակական ֆիզկուլտուրային ակտիվի ստեղծումը դպրոցներում և պիոներական կազմակերպություններում տարվող մասսայական մարզական աշխատանքի համար: Կան կոմպլեքսային (սպորտի մի քանի ձևեր) և մասնագիտացված (սպորտի մի ձև) Մ. մ. դ.: Ստեղծվում են միութենական հանրապետությունների լուսավորության մինիստրությունների, ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստրության, կամավոր մարզական ընկերությունների և գերատեսչությունների համակարգում: Լինում են շրջանային, քաղաքային, մարզային, հանրապետական և կենտրոնական: Դպրոցներն ընդունվում են համապատասխան ֆիզիկական պատրաստություն ունեցող 8—14 տարեկան ընտրովի երեխաներն ու պատանիները՝ հանրակրթական դպրոցների երաշխավորությամբ: Մ. մ. դ-ում, որպես կանոն, կազմակերպվում են նախապատրաստական, պատանեկան 2-րդ և 1-ին ու մեծահասակների 2-րդ և 1-ին սպորտային կարգերի, սպորտի վարպետության թեկնածուների, սպորտի վարպետների ծրագրերով խմբեր: Ուս. ժամկետը 1—2 տարի է: Յուրաքանչյուր տարվա համար սահմանված են ընդհանուր և հատուկ ֆիզիկական պատրաստության ու սովորողների սպորտային նվաճումների մակարդակին համապատասխան նորմաներ:

1979-ին ՍՍՀՄ-ում կար մոտ 5948 (2.032341 սովորող), ՀՍՍՀ-ում՝ 116 (48815) Մ. մ. դ., այդ թվում՝ 80-ը՝ ժողկրթության, 29-ը՝ կամավոր սպորտընկերությունների, 7-ը՝ սպորտկոմիտեի համակարգում:

**ՄԱՆԿԱՊԱՐՏԵԶ**, նախադպրոցական տարիքի երեխաների հասարակական դաստիարակության հիմնարկ: Գոյություն ունի գրեթե բոլոր երկրներում: Ժողկրթության համակարգի առաջին օղակն է (տես *Նախադպրոցական հիմնարկներ*): Մ-ի տիպի մանկական անդրանիկ հիմնարկությունը՝ փոքրերի դպրոցը, կազմակերպել է Ռ. Օուենը 1802-ին, Նյու Լանարկում (Շոտլանդիա): Նախադպրոցական հիմնարկը «Մ.» է անվանել Ֆ. Ֆրեբելը (Գերմանիա) 1837-ին: Ռուսաստանում առաջին Մ-ները բացվել են XIX դ. 60-ական թթ.:

Մ-ների լայն ցանց է ստեղծվել սովետական իշխանության տարիներին: 1979-ին ՍՍՀՄ-ում կար 32 հզ. 600 (2 մլն 442 հզ. երեխա), ՀՍՍՀ-ում՝ 1061 (130 հզ. երեխա): Մ-ներ են բաց անում ժող. դեպուտատների տեղական սովետները, ձեռնարկությունները, գերատեսչությունները, կոլտնտեսությունները: Նախադպրոցական բոլոր հիմնարկների աշխատանքը ղեկավարում են լուսավորության մինիստրություններն ու դրանց տեղական մարմինները: Մ-ների դաստիարակչական աշխատանքի բովանդակությունը որոշվում է Մ-ի երեխաների դաստիարակության վերաբերյալ պետ. ծրագրով: Մ-ում իրականացվում է ֆիզիկական, մտավոր, գեղագիտական և աշխատանքային դաստիարակություն՝ ելնելով երեխաների տարիքային առանձնահատկություններից: Խմբերը կազմվում են տարիքային սկզբունքով, յուրաքանչյուր խմբում ընդգրկվում է 20—25 երեխա. կրտսերների խմբում՝ 4-ամյա, միջին՝ 5-ամյա, մեծերի՝ 6-ամյա, նախադպրոցականների՝ 7-ամյա: Գոյություն ունեն նաև գիշերօթիկ Մ-ներ: Մ-ի ռեժիմում շատ ժամանակ է հատկացվում բազմազան, հատկապես՝ դիդակտիկական խաղերին, որոնք նպաստում են խոսքի և լսողության, հաշվելու, գույների իմացության և այլ կարողությունների զարգացմանը (տես *Մանկական խաղեր*): Պարապմունքների ընթացքում երեխաները ծանոթանում են բնության երևույթներին և հասարակական կյանքին, սովորում նկարել, կառուցել, երգել ևն, տիրապետում տարրական գիտելիքների: Մ. երեխաներին նախապատրաստում է դպրոցի համար: Նախադպրոցական հիմնարկի աշխատողների համար բաց են թողնվում զննական պիտույքներ, նկարներ, ալբոմներ, կինոնկարներ, մեթոդական գրականություն, տեղեկատուներ ևն: Մ-ի երեխաների դաստիարակության հարցը լայնորեն լուսաբանում է «Նախադպրոցական դաստիարակություն» («Дошкольное воспитание») հանդեսը:

Սոցիալիստական մյուս երկրներում նախադպրոցական հիմնարկները նույնպես մտնում են ժողկրթության համակարգի մեջ և պահվում պետության միջոցներով: Կապիտալիստական երկրներում Մ-ները պահվում են գլխավորապես մասնավոր, ինչպես նաև եկեղեցական և հասարակական կազմակերպությունների միջոցներով:

**ՄԱՆԿԱՍԱՐ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Կարաքիլիսեի գավառում: 1909-ին ուներ 60 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ:

**ՄԱՆԿԱՎԱՐԺ**, հանրակրթական դպրոցի ուսուցիչ, պրոֆտեխնիկական, հատուկ միջնակարգ կամ բարձրագույն ուսումնական հաստատության դասատու, նախադպրոցական հիմնարկի, գիշերօթիկ դպրոցի, մանկատան, դաստիարակչական գաղութի դաստիարակ, արտադպրոցական հիմնարկի և այլ աշխատող, ինչպես նաև մանկավարժության, որպես գիտության, պրոբլեմներ մշակող գիտական աշխատող:

**ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ** գիտահետազոտական ՀՍՍՀ, կազմակերպվել է 1932-ին, սկզբնապես կոչվել ՀԽՍՀ լուսժողկոմատի մանկավարժության և մանկաբանության գիտահետազոտական ինստ.: 1936-ին լուծարքի է ենթարկվել: 1939-ին նորից բացվել է և կոչվել Դպրոցների գիտահետազոտական ինստ., 1962-ին վերանվանվել Հայկական ՍՍՀ լուսավորության մինիստրության մանկավարժական գիտությունների գիտահետազոտական ինստ.: Զբաղվում է մատաղ սերնդի կրթության և դաստիարակության հարցերով, հետազոտում է կրթության բովանդակության, ուսուցման և դաստիարակության ձևերի, մեթոդների ու միջոցների կատարելագործման, ինչպես նաև ժող. կրթության զարգացման հեռանկարներին վերաբերող խնդիրները: Հանձնարարականներ է պատրաստում հայրենական և արտասահմանյան մանկավարժական գիտության նվաճումները պրակտիկայում օգտագործելու վերաբերյալ, ուսումնասիրում և տարածում է մանկավարժական առաջավոր փորձը, կոորդինացնում է մանկավարժական գիտության գծով տարվող գիտահետազոտական աշխատանքը, կազմակերպում է մանկավարժական ընթերցումներ, գիտական համաժողովներ, սերտ կապ է պահպանում ՍՍՀՄ ՄԳԱ-ի և եղբայրական հանրապետությունների համապատասխան ինստ-ների հետ: Ունի 14 սեկտոր ու բաժին, շուրջ 75 գիտաշխատող (1980): *Ս. Խուդոյան*

**«ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ԹԵՐԹ»**, ամսագիր: Լույս է տեսել 1878—79-ին, Թիֆլիսում: Խմբագիր-արտոնատեր՝ Հ. Տեր-Հովհան-

նիսյան: Տպագրել է նյութեր մանկավարժության վերաբերյալ, լուսաբանել Անդրկովկասի կրթական հաստատությունների գործունեությունը: Կարևորել է ուսուցողական նյութերի օգտագործումը, մանկական և ժող. երգերի ուսուցումը, մերժել պատիժը: Հրատարակել է Ա. Բահաթրյանի «Մայրենի լեզվի ուսուցումը տարրական դպրոցների մեջ» (1878, №1—4), Ս.Մանդինյանի «Թվաբանության մեթոդիկայի մի քանի օրինակ» (1879,№8) հոդվածները: Ծանոթացրել է եվրոպացի նշանավոր մանկավարժներ Ֆ. Ֆրեոբելի, Ի. Պեստալոցցիի մեթոդներին: Տպագրել է նաև գրախոսություններ, արտասահմանյան երկրների մանկավարժական կյանքի նորություններ ևն:

*Տ. Վարդանյան*

**ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏՆԵՐ** ՍՍՀՄ-ում, բուհերի հիմնական տիպ, որոնք ուսուցիչներ են պատրաստում միջնակարգ դպրոցների և մանկավարժներ՝ նախադպրոցական հիմնարկների ու հատուկ դպրոցների համար: Մ. ի. գտնվում են միութենական հանրապետությունների լուսավորության մինիստրությունների տնօրինության տակ: Մ. ի-ի խմբին են պատկանում նաև կուլտուրայի մինիստրությունների համակարգում գտնվող մի շարք մասնագիտական բուհեր: Մ. ի. ունեն բոլոր միութենական հանրապետությունները: 1979-ին ՍՍՀՄ-ի մոտ 200 Մ. ի-ում սովորել է ավելի քան 800 հզ. ուսանող: Մ. ի-ից շատերն ունեն ասպիրանտուրա: Հայաստանում գործում են Խ. Աբովյանի անվ. հայկ. (1922, Երևան), Երևանի Վ. Յա. Բրյուսովի անվ. ռուսաց և օտար լեզուների (1949), Լենինականի Մ. Նալբանդյանի անվ. (1934) և Կիրովականի (1969) Մ. ի.: Տես նաև *Մանկավարժական կրթություն* հոդվածը:

**ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ** դպրոցի, դպրոցի կոլեկտիվ ղեկավարման մարմին: Մ. խ-ի կազմի մեջ են մտնում դպրոցի դիրեկտորը, նրա տեղակալները, դպրոցի բոլոր մանկավարժները, գրադարանավարը, ավագ պիոներ-ջոկատավարը, դպրոցի բժիշկը, ծնողական կոմիտեի նախագահը: Մ. խ-ի նիստին կարող են հրավիրվել դպրոցի ԼԿԵՄ կոմիտեի քարտուղարը, դրուժինայի խորհրդի նախագահը, հասարակական և սովետական կազմակերպությունների ներկայացուցիչներ, ծնողներ:

Մ. խ-ի նախագահը դպրոցի դիրեկտորն է: Քարտուղար է ընտրվում ուսուցիչներից մեկը (1տարի ժամկետով): Մ. խ-ի անդամները հավասար իրավունքներ ունեն: Որոշումներն ընդունվում են ձայների մեծամասնությամբ՝ բաց քվեարկությամբ և պարտադիր են դպրոցի բոլոր աշխատողների համար: Քննարկվում են դիրեկցիայի հաշվետվությունները, ուսուցիչների զեկուցումներն ու հաղորդումները, մանկավարժական կոլեկտիվի աշխատանքի արդյունքները, սովորողներին հաջորդ դասարան փոխադրելու և ավարտելու, պարգևատրելու և խրախուսելու, վարքի գնահատականն իջեցնելու, ինչպես նաև դպրոցից վտարելու հարցերը: Ուս. տարվա ընթացքում անց է կացվում 5—7 նիստ:

**ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅՈՒՆ**, մանկավարժական ինստիտուտներում, ուսումնարաններում և համալսարաններում հանրակրթական դպրոցների և ուսումնա-դաստիարակչական այլ հիմնարկների համար մանկավարժ. կադրերի (ուսուցիչներ, դաստիարակներ ևն) պատրաստման համակարգ (տես *Բարձրագույն կրթություն*, *Միջնակարգ մասնագիտական կրթություն*, *Պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթություն*, *Ասպիրանտուրա* հոդվածները): Մինչհեղափոխական Ռուսաստանում տարրական դպրոցների համար ուսուցիչներ պատրաստող ուս. հաստատությունների հիմնական տիպը ուսուցչական սեմինարիաներն էին: Տարրական դպրոցների ուսուցիչներ էին պատրաստում նաև իգական գիմնազիաների, իգական թեմական ուսումնարանների մանկավարժական դասարանները և Պետերբուրգի իգական մանկավարժական ինստ-ը: Եկեղեցական-ծխական դպրոցների համար ուսուցիչներ էին պատրաստում եկեղեցական-ուսուցչական, ինչպես և երկդասյան ուսուցչական դպրոցները: 1804-ի համալսարանական կանոնադրության համաձայն, համալսարաններին կից ստեղծվեցին 3-ամյա մանկ. ինստ-ներ: XIX դ. 60—70-ական թթ. բացվեցին համալսարանական տիպի Բարձրագույն իգական դասընթացներ: 1918—20-ին կազմակերպվեցին մասնագիտացված դպրոցական, նախադպրոցական և մանկավարժական այլ, ոչ մեծ ուս. հաստատություններ և դասընթացներ, որոնք հետագայում միավորվեցին ու վերածվեցին մանկավարժական բուհերի: Մինչհեղափոխական ուսուցչական սեմինարիաները վերակառուցվեցին 4-ամյա ժող. կրթության ինստ-ների, մյուսները՝ տարրական դպրոցի ուսուցիչներ պատրաստող միջնական գործող մանկավարժական դասընթացների: Առաջին խոշոր մանկավարժական սովետական բուհերից էր Ն. Կրուպսկայայի անվ. կոմունիստական դաստիարակության ակադեմիան: 1918-ին Վ. Գերիեի Բարձրագույն իգական դասընթացների հիման վրա ստեղծվեց Մոսկվայի 2-րդ համալսարանը, Լենինգրադում՝ մանկավարժական ինստ-ը: 1920-ական թթ. ՍՍՀՄ մի շարք համալսարաններում բացվեցին մանկավարժական ֆակուլտետներ: 30-ական թթ. համալսարանների մանկավարժական և այլ ֆակուլտետների հիման վրա ստեղծվեց մանկավարժական ինստ-ների, այդ թվում՝ օտար լեզուների մանկավարժական ինստ-ների ցանց: Ժամանակակից մանկավարժական ուս. հաստատությունների հիմնական տիպը մանկավարժական ուսումնարաններն են, ինդուստրիալ-մանկավարժական տեխնիկումները, մանկավարժական ինստ-ները և համալսարանները: Դպրոցի ցածր դասարանների ուսուցիչներ, նախադպրոցական հիմնարկների դաստիարակներ, ավագ պիոներ-ջոկատավարներ են պատրաստում մանկավարժական ուսումնարանները, միջնակարգ դպրոցների ուսուցիչներ՝ մանկավարժական ինստ-ները, համալսարանները, ինչպես նաև արվեստների, ֆիզիկական դաստիարակության որոշ ինստ-ներ:

**ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ՀՈԳԵԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, *հոգեբանության* բնագավառ, որ ուսումնասիրում է նպատակամետ մանկավարժական պրոցեսի պայմաններում առաջացած հոգեբանական երևույթները, մշակում ուսուցման և դաստիարակության հոգեբանական հիմունքները: Մ. հ-յան ուսումնասիրության համար առավել բնորոշ է «վերափոխող փորձարարության» մեթոդը, այսինքն՝ այն փոփոխությունների ուսումնասիրությունը, որոնք տեղի են ունենում երեխայի հոգեկան կառուցվածքում, փորձնական մանկավարժական պրոցեսի ընթացքում: Մ. հ., որպես հոգեբանական գիտության ինքնուրույն բնագավառ, ձևավորվել է XIX—XX դդ., ունի երկու բաժին՝ դաստիարակության հոգեբանություն և ուսուցման հոգեբանություն: Դաստիարակության հոգեբանության խնդիրներն են. անձի ձևավորման հոգեբանական հիմունքների մշակումը, երեխաների և երիտասարդների նկատմամբ անհատական մոտեցումը, մանկական և երիտասարդական կոլեկտիվները մանկավարժորեն կազմակերպելու համար անհրաժեշտ հոգեբանական նախադրյալների բացահայտումը: Ուսուցման հոգեբանությունն ուսումնասիրում է ուս. և աշխատանքային գործունեության ընթացքում սովորողների՝ գիտելիքների և հմտությունների յուրացման պրոցեսը, գործնական աշխատանքի դերը՝ որպես գիտելիքների աղբյուր, երեխայի մտածողության զարգացման վրա ուսուցման ներգործությունը ևն: Մ. հ. կարևոր նշանակություն ունի ուսուցման մասնավոր մեթոդիկաների մշակման, ուս. ծրագրերի և դասագրքերի կազմման, ուսումնադաստիարակչական աշխատանքի գիտականորեն հիմնավորված համակարգի ստեղծման, միջոցառումների մանկավարժական ներգործման, հոգեբանության տեսության զարգացման համար:

*Գրկ.* Ու շ ի ն ս կ ի Կ. Դ., Մանկավարժական ընտիր երկեր, հ. 1—2, Ե., 1958—59: Մ ա ն կ ա վ ա ր ժ ա կ ա ն հ ո գ ե բ ա ն ու թ յ ու ն հ ա ր ց ե ր (գլխ. խմբ. Մ. Մազմանյան), Ե., 1965: Б о ж о в и ч Л. И., Личность и ее формирование в детском возрасте, М., 1968; К р у т е ц к и й В. А., Основы педагогической психологии, М., 1972; Возрастная и педагогическая психология; под ред. А. В. Петровского, М., 1973, гл. 7—9.

**«ՄԱՆԿԱՎԱՐԺԱՆՈՑ»**, մանկավարժական և գրական հանդես: Լույս է տեսել 1884—1887-ին, անկանոն պարբերականությամբ, Թիֆլիսում, Ախալցխայում, Պետերբուրգում: Խմբագիր՝ Խ. Ստեփանե: «Մ.» հասարակական կյանքից կտրված, փոքրածավալ հրատարակություն էր, որտեղ մեծ մասամբ տեղ են գտել եվրոպական երկրներում դպրոցական գործի դրվածքին վերաբերող հոդվածներ, ուսուցողական նյութեր, վիճակագրական տվյալներ, խորհուրդներ հայ ուսուցիչներին: Գրական բաժնում հիմնականում տպագրվել են խմբագրի բանաստեղծությունները՝ Իշխան Բագրատունի կեղծանունով:

*Մ. Մխիթարյան*

**ՄԱՆԿԱՎԱՐԺՈՒԹՅՈՒՆ**, գիտություն մարդու ձևավորման համար հատուկ համակարգված նպատակամետ գործունեության, կրթության, ուսուցման, դաստիարակության ձևերի, մեթոդների ու բովանդակության մասին: Մ-յան հիմնական կատեգորիաներն են՝ ա. անձի ձևավորումը (անհատի կազմավորման պրոցեսն ինչպես նպատակամետ գործողությունների,

այնպես էլ շրջապատող միջավայրի հակասական ազդեցությունների ներքո), բ. *դաստիարակությունը* (ընտանիքի, հասարակության, պետ. ու հասարակական հիմնարկների ու կազմակերպությունների միասնությամբ աշխարհայացքի ձևավորումը, աշխատանքային, մտավոր, բարոյական, գեղագիտական ու ֆիզիկական դաստիարակությունը), գ. *կրթությունը* (գիտելիքների յուրացման ընթացքն ու արդյունքները, հմտությունների ու կարողությունների մշակումը, որոնք, ի վերջո, ապահովում են մարդու ճանաչողական ընդունակությունների որոշակի մակարդակ և նրան նախապատրաստում պրակտիկ գործունեության), դ. *ուսուցումը* (մարդուն կրթելու անընդմեջ գործընթացը՝ գիտելիքների հաղորդումը՝ մի կողմից, և դրանց ակտիվ յուրացումը՝ մյուս կողմից):

**Կառուցվածքն ու համակարգը**: Մ-յան շրջանակներում գոյություն ունեն համեմատաբար ինքնուրույն բաժիններ, որոնք ուսումնասիրում են ուսումնադաստիարակչական պրոցեսի տարբեր կողմերը: Կրթության և ուսուցման կազմակերպման, նպատակների, խնդիրների, բովանդակության, մեթոդների ու սկզբունքների մշակման հարցերով զբաղվում է *դիդակտիկան* (կրթության ու ուսուցման տեսություն): Սովորողների բազմատեսակ գործունեության կազմակերպումը, անձի ձևավորման բարոյա-գեղագիտական որակները և քաղ. համոզվածությունը կազմում են դաստիարակության տեսության ու մեթոդիկայի առարկան: Ժող. կրթության կառավարման, ուսումնադաստիարակչական հիմնարկների կառուցվածքի ու տնօրինության հետ կապված կազմակերպական-մանկավարժական պրոբլեմային բոլոր հարցերով զբաղվում է դպրոցավարությունը: Բաժիններ են նաև ընդհանուր Մ., տարիքային Մ. (նախադպրոցական, դպրոցական, բուհական), հատուկ Մ. (*տիֆլոպեդագոգիկա*, *սուրդոպեդագոգիկա*, *օլիգոֆրենոպեդագոգիկա*, *լոգոպեդիա*), համեմատական Մ. և մանկավարժության պատմությունը: Մ. մտնում է մարդուն, մարդկային հասարակությունը ու նրա գոյության պայմաններն ուսումնասիրող գիտությունների (փիլիսոփայություն, *հոգեբանություն*, *սոցիոլոգիա*, տնտեսագիտություն, պատմություն, անատոմիա, ֆիզիոլոգիա, բժշկություն ևն) համակարգի մեջ, օգտագործում նրանց հետազոտման արդյունքները, տեսական դրույթները:

**Զարգացման փուլերը**: Մանկավարժական մտքի իմաստավորման առաջին փորձերը կատարվել են դեռևս ստրկատիրական հասարակարգում: Դեմոկրիտի, Սոկրատեսի, Պլատոնի ու Արիստոտելի փիլ. աշխատություններում որոշակի տեղ են գրավում դաստիարակության բովանդակությանը, միջոցներին, նպատակներին ու այլ խնդիրներին վերաբերող մտքերը: Հին Հունաստանում ու Հռոմում փիլիսոփայություն ուսուցանելուն զուգընթաց առաջ էին քաշվում մտավոր, հոգեկան ու ֆիզիկական դաստիարակության միասնության խնդիրները: Վաղ միջնադարում ուսուցումն ու դաստիարակությունը ենթարկված էին կրոնին և ունեին միայն հոգևոր բովանդակություն: XIV—XVI դդ. լուրջ քայլեր արվեցին մարդկային միտքը կրոնական դոգմաներից ազատագրելու ուղղությամբ, աշխուժացավ հետաքրքրությունը մարդու, նրա ամենօրյա գործունեության նկատմամբ: Վերածննդի ժամանակաշրջանի հումանիստների (Թ. Մոր, Թ. Կամպանելլա, Էրազմ Ռոտերդամցի, Ֆ. Ռաբլե, Մ. Մոնտեն) տարբեր բնույթի աշխատություններում արծարծվում էին մարդու բազմակողմանի ու ներդաշնակ զարգացման խնդիրները՝ հիմնված զարգացում ապրող գիտական մտքի և անտիկ աշխարհի ժառանգության վրա: Մ-յան պատմությունը, որպես մարդու դաստիարակության ամբողջական տեսություն, ընկըսվում է եվրոպական առաջին բուրժ. հեղափոխությունների ժամանակներից և կապվում է չեխ մտածող Յա. *Կամենսկու* անվ. հետ, որը տեսականորեն իմաստավորելով և ընդհանրացնելով եվրոպական դաստիարակության փորձը, ստեղծեց մանկավարժական մի կուռ համակարգ: Նրա «Մեծ դիդակտիկա»-ն, ուր քննարկված էին դաստիարակության ու ուսուցման բոլոր կարևոր հարցերը, լայն արձագանք գտավ շատ երկրներում: Լինելով ուսուցման դասարան-դաս համակարգի հիմնադիրը՝ նա նաև առաջինն էր, որ հիմնավորեց մարդուն անընդմեջ (մինչև կյանքի վերջը) կրթելու ու դաստիարակելու գաղափարը և այդ գործում գրքի, որպես հիմնական միջոցի, ստեղծման անհրաժեշտությունը: XVIII—XIX դդ. մանկավարժական մտքի զարգացման վրա նկատելի ազդեցություն ունեցան ֆրանս. մատերիալիզմը և գերմ. կլասիկ փիլիսոփայությունը: Կ. Հելվեցիուսը, Դ. Դիդրոն, Ժ. Ժ. Ռուսոն, Ի. Կանտը, Յո. Գ. Ֆիխտեն, Գ. Հեգելը և ուրիշներ առաջադրում էին անհատի ձևավորման ու դաստիարակության ·նոր, դեմոկրատական տեսություններ ու դրույթներ: Դրանց ազդեցությունն էր կրում շվեյցարացի մանկավարժ, դեմոկրատ Ի. Գ. *Պեստալոցցիի* գործունեությունը, որը ձգտում էր ուսուցման ու դաստիարակության տեսությունը կառուցել հոգեբանության տվյալների հիման վրա: Աշխատանքային դաստիարակության նրա տեսությունը և նոր գրել, կարդալ, հաշվել սովորեցնելու մեթոդները կարևոր նշանակություն ունեցան Մ-յան հետագա զարգացման համար: Դիդակտիկային մեծ ծառայություն մատուցեց գերմանացի մանկավարժ, դեմոկրատ Ֆ. Ա. Դիստերվեգը: Կրթության և ուսուցման պրոցեսը բնությանը հարմարեցնելու տարածված տեսությանը նա հակադրեց մշակույթին հարմարվելու նոր տեսությունը, ըստ որի կրթության և ուսուցման պրոցեսը կազմակերպելիս պետք է նկատի ունենալ տվյալ երկրի ու ժողովրդի մշակույթի, պատմության ու տնտեսության ամբողջական տըվյալները: Գերմանացի փիլիսոփա, հոգեբան ու մանկավարժ Յո. Ֆ. *Հերբարտը* փորձեց Մ. ներկայացնել փիլիսոփայության ու հոգեբանության վրա հիմնված, գիտականորեն մշակված տեսություններով, սակայն ավելի լայն տարածում գտան նրա պահպանողական հայացքները, մասնավորապես՝ երեխայի անձը ճնշելու մեթոդը (մանրամասնորեն մշակված ու համակարգված պատժամիջոցներ): Նշված բոլոր մտածողներն էլ ընդունում էին դըպրոցի նկատմամբ կրոնական հովանավորությունը և կրոնի ուսուցումը որպես պարտադիր առարկա: Հենց դրանով էլ պայմանավորված է տվյալ ժամանակաշրջանի Մ-յան սխոլաստիկ էությունը:

Ռուսաստանում դպրոցական պետ. համակարգը, մի շարք տարբերակներով, առաջին անգամ ձևավորվել է 1786-ի կանոնադրությամբ: Մանկավարժական միտքն էլ ելնում էր այդ տարբերակներից: Ֆ. Ֆ. Սալտիկովի, Ֆեոֆան Պրոկոպովիչի, Վ. Ն. Տատիշչևի, Ն. Ի. Նովիկովի և ուրիշների մանկավարժական հայացքներն արտահայտում էին «լուսավորյալ միապետության» շահերը և գտնվում էին ֆրանս. լուսավորիչների ազդեցության տակ: Ռուս. մանկավարժական մտքի զարգացմանը մեծապես նպաստեցին Ա. Ն. Ռադիշչևը, Ա. Ի. Գերցենը, Վ. Գ. Բելինսկին, Ա. Ն. Դոբրոլյուբովը, Ն. Գ. Չեռնիշևսկին, Դ. Ի. Պիսարևը և հեղափոխական-դեմոկրատական սերնդի այլ ներկայացուցիչներ: Կրթության և դաստիարակության նպատակը նրանք համարում էին հեղափոխական-մատերիալիստական աշխարհայացքով զինված, համակողմանի կըրթված, աշխատասեր, հասարակական չարիքի դեմ անհաշտ պայքարի պատրաստ հայրենասեր-քաղաքացու ձևավորումը:

Ճորտատիրության վերացման նախօրյակին սպասվելիք դպրոցական բարենորոգման նախապատրաստությանն ակտիվ մասնակցություն ունեցան Ն. Ի. Պիրոգովը, Լ. Ն. Տոլստոյը, Ն. Խ. Վեսելը և այլ խոշոր գիտնականներ, գրողներ ու կըրթական գործիչներ: Պայքար ծավալվեց արտասահմանյան մանկավարժական տեսություններն ու մեթոդները ոչ քննադատաբար կիրառելու դեմ, շարժում սկսվեց կրթության ու դաստիարակության ազգային համակարգ ստեղծելու համար: Ռուսաստանում Մ-յան՝ որպես գիտության ձևավորումը կապված է Կ. Դ. *Ուշինսկու* անվ. հետ, որն ստեղծագործաբար օգտագործեց եղած դրականը և ձևավորեց մանկավարժական հայացքների կուռ համակարգ և դրա հիման վրա՝ կրթության ու դաստիարակության կայուն ու ամբողջական տեսություն: Ուշինսկու հայացքների ազդեցությամբ ու նրա հետևորդների (Պ. Ֆ. Կապտերով, Վ. Պ. Օստրոգորսկի, Վ. Պ. Վախտերով, Ի. Ն. Ուլյանով, Վ. Յ. Ստոյունին և ուրիշներ) ակտիվ գործունեության շնորհիվ ռուս. մանկավարժական միտքը նոր զարգացում ապրեց:

Իսկական, գիտական Մ-յան ձևավորման ու զարգացման շրջադարձային փուլ հանդիսացավ Կ. Մարքսի ու Ֆ. Էնգելսի ստեղծած դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմը: Գիտական կոմունիզմի հիմնադիրները ձևավորեցին նոր մարդու *կոմունիստական դաստիարակության* տեսությունը, ցույց տվեցին, որ այդ տեսությունը կարող է իրականացվել միայն բանվոր դասակարգի իշխանության պայմաններում:

Դաստիարակության մասին մարքսիզմի ուսմունքը հարստացրեց Վ. Ի. Լենինը: Սոցիալիստական կուլտուրայի, ժող. լուսավորության ու կոմունիստական դաստիարակության մասին լենինյան գաղափարները համարվում են սովետական Մ-յան հիմքն ու անկյունաքարը:

**Մանկավարժական միտքը Հայաստանում**: Հայաստանում ուսուցման պատմությունը սերտորեն կապված է հայ պետականության առաջացման հետ: Դեռևս հեթանոսական շրջանում *մեհյաններում* կատարվող միասնական ծեսերն ու արարողությունները, արհեստների ծաղկումը, արվեստի առանձին տեսակների, մասնավորապես թատրոնի գոյությունը մարդկանց սովորեցնելու, վարժեցնելու վկայություն են: Մինչև գրերի գյուտը կրթության և ուսուցման գործում կարևոր դեր են կատարել *նախամաշտոցյան դպրոցները*: Հայ գրերի գյուտից հետո *Մեսրոպ Մաշտոցն* ու նրա աշակերտները Հին Հայաստանի բոլոր նահանգներում ստեղծեցին առաջին հայկ. դպրոցները: Այդ դպրոցների շրջանակում ծագեց ու սկսեց զարգանալ հայ մանկավարժական միտքը: Ազգային մշակույթի, գիտության, նաև՝ Մ-յան զարգացման գործում անգնահատելի դեր կատարեցին Տաթևի, Գլաձորի, Սանահինի համալսարանները, Նարեկավանքի, Վարագավանքի, Հաղպատի դպրոցները (տես *Տաթևի համալսարան*, *Գլաձորի համալսարան*, *Սանահինի համալսարան*, *Նարեկավանքի դպրոց*, *Վարագավանքի դպրոց*, *Հաղպատի դպրոց*): Կրթական այս օջախներում կարևոր դեր էր հատկացվում մայրենի լեզվին, այլ լեզուների ուսուցումը տարվում էր նրա հիմքի վրա: Դասավանդվում էին փիլիսոփայություն, մաթեմատիկա, երկրաչափություն, աստղաբաշխություն, պատմություն, արվեստներ (գրչություն, նկարչություն, երաժշտություն, ճարտարապետություն) և այլ գիտություններ: Տարբեր ժամանակներում դասավանդել են Անանիա Շիրակացին, Գրիգոր Մագիստրոսը, Ներսես Մշեցին, Եսայի Նչեցին, Հովհան Որոտնեցին, Գրիգոր Տաթևացին, Թովմա Մեծոփեցին և ուրիշներ: Դպրոցական կրթական գործի վերելքի հետ միասին զարգացում ապրող մանկավարժական միտքը ամբողջությամբ գտնվում էր քրիստոնեության ազդեցության տակ, կրթության և ուսուցման մեթոդները մշակվում էին կրոնական դիրքերից ու արտահայտում նրա շահերը: Անանիա Շիրակացու այբբենարանը, թվաբանության, աշխարհագրության և տիեզերագիտության գրքերը աշակերտներին կապում էին կոնկրետ գիտությունների հետ: XI դ. Հովհաննես Սարկավագը (Տաթև) կարևորում էր լեզվի և գիտությունների ուսուցումը, Տաթևացին իր «Սահմանադրություն դաստիարակության» աշխատության մեջ հիմնավորում էր կրթության ու դաստիարակության նոր մեթոդներ, սակայն ուսուցման ամբողջ աշխատանքը, այնուամենայնիվ, ենթարկված էր կրոնին: Հայ Մ-յան, որպես գիտության, ձևավորման գործում վճռական նշանակություն ունեցավ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումը: 1836-ի Պոլոժենիեով Էջմիածնին թույլ տրվեց գործող բոլոր եկեղեցիներին կից բացել մեկական ծխական, իսկ կաթողիկոսությանը ենթակա 6 թեմերում՝ մեկական թեմական դպրոց: Մինչ այդ դպրոցներ էին բացվել Աստրախանում (Աղաբաբյան՝ դպրոց), Նոր Նախիջևանում, Ղզլարում, Մոզդոկում: Մեծ հեղինակություն էին վայելում *Լազարյան ճեմարանն* ու Թիֆլիսի *Ներսիսյան դպրոցը*, հայտնի էին Կ. Պոլսի Խասգյուղի Ներսիսյան վարժարանը, *Սկյուտարի ճեմարանը*, Վենետիկի *Մուրատ-Ռափայելյան վարժարանը*: Հետագա տասնամյակներում տղաների համար միջնակարգ դպրոցներ բացվեցին Թեոդոսիայում (Խալիբյան դպրոց), Կարինում (Սանասարյան վարժարան), Վանում (Երամյան դպրոց), Կ. Պոլսում (Կեդրոնական վարժարան), օրիորդաց դպրոցներ հիմնվեցին Կ. Պոլսում (Մեզբուրյան դպրոց), Թիֆլիսում (Գայանյան, Հովնանյան), Ալեքսանդրապոլում (Արղության), Երևանում (Գայանյան), Նոր Նախիջևանում (Գոգոյան), Ախալցխայում (Եղիսաբեթյան), Շուշիում (Մարիամ-Ղուկասյան) են: Դպրոցական այսպիսի ցանցն, ինչ խոսք, պետք է ունենար իր տեսաբանները, ուսուցման մեթոդներ մշակողներն ու ընդհանրացնողները: XIX դ. 1-ին կեսին մանկավարժական բեղմնավոր աշխատանք ծավալեցին Հ. *Ալամդարյանը*, Մ. *Թաղիադյանը*, Ն. Զորյանը, Ա. Փափովիչը և ուրիշներ: Այս շրջանում առանձնանում է Խ. *Աբովյանի* գործունեությունը: Մ-յան մեջ նա նորարար էր, հնի ու հետադիմականի դեմ խիզախ մարտնչող: Հայ Մ-յան նրա ստեղծած համակարգը արտահայտում էր ժող. մասսաների շահերը: Աբովյանը հայ իրականության մեջ առաջինն էր, որ տառահեգման համակարգին հակադրեց հնչական համակարգը, հիմնավորեց աշխարհաբարը դպրոցական լեզու դարձնելու անհրաժեշտությունը, գիտ. խորաթափանցությամբ մշակեց կրթական գործում դպրոցի ու ընտանիքի, ուսուցչի ու աշակերտի հարաբերությունների, ֆիզիկական ու աշխատանքային դաստիարակության միասնության հարցերը, մերժեց կրոնն ու հոգևոր ուսուցումը, ծեծն ու պատժի այլ միջոցները: Նրա պրակտիկ գործունեությունը և «Նախաշավիղ կրթության» մեջ արտահայտված գաղափարները զգալիորեն հարստացրին հայ Մ.: Կրթության, լուսավորության ու դաստիարակության գործում հայ կղերականության դեմ Աբովյանի պայքարը շարունակեցին Մ. Նալբանդյանն ու Ս. Նազարյանցը, որոնք զգալի դեր խաղացին դպրոցի ժողովրդականացման, ուսուցման բովանդակության հարստացման և աշխարհաբարը կրթական լեզու դարձնելու հարցերում: XIX դ. 2-րդ կեսին հայ մանկավարժական միտքը որոշակի աշխուժացում ապրեց: Իրենց գործունեությունը ծավալեցին Պ. Պռոշյանը, Պ. Շանշյանը, Խ. Ստեփանեն, Հ. Տեր-Միրաքյանը, Ն Տեր-Ղևոնդյանը, Ս. Պալասանյանը, մասնագետ մանկավարժներ Ս. Մանդինյանը, Ա. Բահաթրյանը, Մ. Մամուրյանը, Հ. Հինդլյանը, Ս. Բեկնազարյանը, Հ. Իփեկչյանը, Մ. Չերազը, դարավերջում՝ Տ. Ռաշմաճյանը, Գ. Էդիլյանը, Թ. Խզմալյանը, Ս. Լիսիցյանը և ուրիշներ: Հայ մանկապարտեզի ռահվիրաններն էին Սոֆյա Բաբայանը, Գայանե Հովհաննիսյանը, Սոֆյա Երկայնաբազուկ-Արղությանը: Աբովյանի գաղափարների իրականացնողն ու զարգացնողն այդ տարիներին Ղ. *Աղայանն* էր: Թիֆլիսում, Երևանում, Ալեքսանդրապոլում, Շուշիում, Էջմիածնում ու Ախալցխայում լինելով ուսուցիչ և դպրոցական տեսուչ, նա ծաղրի էր ենթարկում հայ կղերականությանը՝ դպրոցական գործի ղեկավարման անճարակության համար. մերժում էր պատիժը և անձնական օրինակով հիմնավորում աշակերտին սիրելու, դասը հետաքրքրական ու բովանդակալից անցկացնելու կարևորությունը. կազմակերպում էր բաց դասեր ու քննարկումներ, դաստիարակությունը համարելով մտավորի, հոգեկանի ու ֆիզիկականի ներդաշնակություն, մեծ տեղ էր տալիս մարզական վարժանքներին, ուսման պրոցեսում հաստատում էր ուսուցչի ղեկավար դերը: Նա դպրոցական մի շարք գրքերի հեղինակ է և թողել է մանկավարժական մեծ ժառանգություն:

Հայ Մ-յան զարգացման գործում մեծ դեր են կատարել Լազարյան ճեմարանն ու *Գևորգյան ճեմարանը*, Ներսիսյան դպրոցը, ժամանակի մանկավարժական հրատարակությունները՝ «Դաստիարակ»-ը (Թեոդոսիա, 1873—74), «Դպրոց»-ը (Վաղարշապատ, 1874—76), «Մանկավարժական թերթ»-ը (Թիֆլիս, 1882—84) են: Կարևոր նշանակություն ունեցավ նաև հայ ուսուցիչների I համագումարը (Թիֆլիս, 1882, օգոստոս—սեպտեմբեր): Չնայած որոշ տեղաշարժերին, XIX դ. հայ դպրոցում ուսման բովանդակությունը մնում էր աղքատիկ, մեթոդները՝ դոգմատիկ, ոգին՝ սխոլաստիկ: Հայ մանկավարժներից շատերը, կրթություն ստանալով արտասահմանում, մասնավորապես Գերմանիայում, գտնվում էին Հերբարտի գաղափարների ազդեցության տակ, ուսուցման հարցերում չէին կարողանում ազատագրվել կրոնական դոգմաներից: XIX դ. վերջին և XX դ. սկզբին հայ Մ-յան մեջ ձևավորվեց մարքսիստական ուղղությունը (Ս. Շահումյան, Ս. Սպանդարյան), որը, պայքարելով խավարամիտ կղերականության և ապազգայնացած բուրժուազիայի դեմ, ձգտում էր դպրոցը փոխադրել մատերիալիստական հիմքի վրա, նրան տալ համաժողովրդական բնույթ: Այդ գաղափարներն իրականացան միայն Հայաստանում սովետական կարգեր հաստատելուց հետո:

**Մանկավարժական գիտությունը ՍՍՀՄ-ում**: Մեծ հոկտեմբերի հաղթանակը պայմաններ ստեղծեց իրականացնելու դաստիարակության մասին մարքս-լենինյան ուսմունքը: Սովետական իշխանության առաջին դեկրետներով դպրոցն անջատվեց եկեղեցուց, ստեղծվեց կրթության ու ուսուցման միասնական պետ. համակարգ, անգրագիտության վերացումը համարվեց համաժող. գործ: Ծնվեց ու զարգացավ նոր, սովետական Մ., որի մշակման, հաստատման ու տեսական հարստացման համար մեծ գործունեություն ծավալեցին Ն. Կ. Կրուպսկայան, Ա. Վ. Լունաչարսկին, Մ. Ն. Պոկրովսկին, Պ. Պ. Բլոնսկին, Պ. Ն. Լեպեշինսկին, Ա. Ս. *Մակարենկոն* և ուրիշներ: 1920-ական թթ. երկրում ստեղծվեց մանկավարժական գիտ. հիմնարկների լայն ցանց, բացվեցին ԳՀԻ-ներ Մոսկվայում ու Լենինգրադում, իսկ 1930-ական թթ.՝ միութենական բոլոր հանրապետություններում: 1933-ին

ստեղծվեց ՌՍՖՍՀ ՄԳԱ, որը 1966-ին վերակազմվեց որպես ՍՍՀՄ ՄԳԱ (միավորում է 12 ԳՀԻ), հրատարակվեցին Մ-յան պատմությանն ու տեսությանը վերաբերող բազմաթիվ աշխատություններ, թերթեր ու ամսագրեր [միայն կենտրոնական 18 ամսագիր, ՀՍՍՀ-ում՝ «Սովետական մանկավարժ»-ը՝ 1926-ից, «Ռուսկի յազիկ վ արմյանսկոյ շկոլե» («Русский язык в армянской школе»)՝ 1957-ից, «Սովետական դպրոց» թերթը՝ 1939-ից]: Լույս տեսան «Մանկավարժական բառարան»-ը (հ. 1—2, 1960), «Մանկավարժական հանրագիտարան»-ը (հ. 1—3, 1927—29 և հ. 1—4, 1964—68): Մանկավարժական կադրերի պատրաստման նպատակով երկրում գործում է մանկավարժական մոտ 200 ինստ. (ՀՍՍՀ-ում՝ 4):

Սովետական Մ-յան զարգացման գործում արժանի ներդրում ունեն Ա. Պ. Պինկևիչը, Բ. Պ. Եսիպովը, Մ. Ա. Դանիլովը, Շ. Հ. Գենեևինը (դիդակտիկա), Վ. Ա. Սուխոմլինսկին, Ի. Ֆ. Սվադկովսկին, Ի. Ա. Կաիրովը, Ն. Գ. Գոնչարևը (դաստիարակության տեսություն), Ֆ. Ֆ. Կորոլևը, Ի. Կ. Կադիրովը, Դ. Օ. Լորդկիպանիձեն, Մ. Մ. Մեխտի-զադեն, Հայաստանում՝ Ի. Հարությունյանը, Հ. Տեր-Միրաքյանը, Գ. Էդիլյանը, Տ. Ռաշմաճյանը, Ա. Շավարշյանը, Մ. Սանթրոսյանը, Շ. Սիմոնյանը, Ա. Մովսիսյանը և ուրիշներ:

Սոցիալիզմի երկրներում մարքսիստական-լենինյան Մ-յան հարստացման բնագավառում հայտնի են Գ. Նոյները, Կ. Խ. Գյունտերը, Խ. Շտոլցը (ԳԴՀ), Մ. Ցիպրոն, Բ. Կույալը, Գ. Պավլովիչը (Չեխոսլովակիա), Վ. Օկոնը, Կ. Սոսնիցկին, Ի. Կուպիսևիչը (Լեհաստան), Ն. Չակարովը, Դ. Ցվետկովը, Ժ. Ատանասևը (Բուլղարիա), Շ. Նեդը, Ե. Ֆեյդեշը (Հունգարիա) և ուրիշներ:

**Ժամանակակից-բուրժուական մանկավարժությունը**: ժամանակակից բուրժ. Մ-յան մեջ, զանազան իդեալիստական փիլ. դպրոցների և կրոնական ուսմունքների գոյության պատճառով, դաստիարակության, կրթության ու ուսուցման պրոբլեմային հարցերի վերաբերյալ չկա հայացքների միասնություն: Նեոպոզիտիվիզմի, էկզիստենցիալիզմի, նեոթոմիզմի, կաթոլիկական, ավետարանական և այլ ուղղությունների Մ-յան միակ ընդհանրությունը հակակոմունիզմն է: Կապիտալիստական աշխարհի մարքսիստ մանկավարժները մերկացնում են բուրժ. Մ-յան հակագիտական տեսություններն ու փորձը և պրոպագանդում սովետական Մ-յան նվաճումները:

Գրկ. Մանկավարժություն (խմբ. Ա. Ի. Կայիրով), պր. 1—2, 2 վերամշկ., լրց., հրտ., Ե., 1949: Մակարենկո Ա. Ս., Մանկավարժական ընտիր երկեր, Ե., 1950: Մովսիսյան Ս. Ա., Ժողովրդական կրթության վիճակը և մարքսիստական մանկավարժական գաղափարների տարածումը Հայաստանում (1905—1917), Ե., 1955: Մովսիսյան Ա. Խ., Ուրվագծեր հայ դպրոցի և մանկավարժության պատմության (X—XV դարեր), Ե., 1958: Շավարշյան Ա. Մ., Հայ մանկավարժներ, հ. 1—2, Ե., 1958—1961: Սանթրոսյան Մ. Հ., Արևելահայ դպրոցը XIX դարի առաջին կեսին, Ե., 1964: Նազիկյան Գ. Ա., Արևմտահայ մանկավարժական միտքն ու դպրոցը, Ե., 1969: Երկյան Վ. Ս., Պայքար հայկական նոր դպրոցի համար Անդրկովկասում (1870—1905), Ե., 1970: Ղազախեցյան Ա. Մ., Հանրակրթական դպրոցը Սովետական Հայաստանում (1941—1970 թթ.), Ե., 1972: Խուդոյան Ս. Կ., Սովետահայ դպրոցի պատմություն, 1920—1941, Ե., 1973: Константинов Н. А., Медынский Е. Н., Шабаева М. Ф., История педагогики, 4 изд., М., 1974; Малькова З. А., Вульфсон Б. Л., Современная школа и педагогика в капиталистических странах, М., 1975.

**ՄԱՆԿԱՏՈՒՆ** ՍՍՀՄ-ում, ծնողներից զրկված կամ նրանց հետ կապը կորցրած, ինչպես նաև պետության օգնության ու պաշտպանության կարիք ունեցող երեխաների դաստիարակության պետական հիմնարկ: Մինչև հեղափոխությունը Ռուսաստանում բարեգործական միջոցներով ստեղծված մանկական ապաստարանները 1918-ին, ԺԿԽ-ի դեկրետով, վերակազմվեցին պետ. Մ-երի: Սովետական պետության առաջին տարիներին Մ-երը գտնվում էին Սոցիալական ապահովության ժողկոմատի տնօրինության տակ: 1920-ից անցան ժողկրթության համակարգի օրգաններին: Մ-ան պետ. ցանցի ստեղծմամբ վերացվեց քաղաքացիական կռիվների տարիներին առաջացած երեխաների անապաստանությունը: Հայրենական մեծ պատերազմի շրջանում (1941—45) Մ-երը առանձնահատուկ դեր կատարեցին սովետական բանակի մարտիկների, պարտիզանների և զոհվածների երեխաների պետական ապահովման ու դաստիարակման գործում: Գոյություն ունի Մ-ան երկու հիմնական տիպ. նախադպրոցական՝ 3—7 տարեկանների և դպրոցական՝ 7—18 տարեկանների համար: Նախադպրոցական Մ. իր աշխատանքը կազմակերպում է մանկապարտեզի ծրագրով: Մ-ան դպրոցահասակ սաները սովորում են տվյալ միկրոշրջանի դպրոցում: Մ. դպրոցի հետ միասին լուծում է կոմունիստական դաստիարակության, երեխաների բազմակողմանի զարգացման խնդիրները, նախապատրաստում նրանց ինքնուրույն կյանքի: Մ-անը կից ստեղծվում է խնամակալական խորհուրդ, որը հասարակական մարմին է և օգնում է մանկավարժական կոլեկտիվին ուսումնա-դաստիարակչական աշխատանքի կազմակերպման և Մ-ան նյութատեխնիկական բազայի ամրապնդման գործում: Մ-ան հանդեպ մեծ հոգատարություն է ցուցաբերում սովետական հասարակությունը՝ շեֆական արդ. ձեռնարկությունները, հիմնարկները, կոլտնտեսությունները, սովխոզները ևն:

**ՄԱՆԿԵՐՄԱՆ**, տես *Կիև*:

**ՄԱՆԿԻԿ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Սղերդի գավառի Հազոյի գավառակում: 1909-ին ուներ 10 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է ցաղթի ճանապարհին: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՄԱՆԿՈՎՍԿԻ** (Mańkowski) Տադեուշ (2.8.1878, Լվով —8.8.1956, Կրակով), լեհ արվեստաբան: Սովորել է Լվովի համալսարանում: Եղել է փաստաբան, 1930-ից նվիրվել է արվեստաբանությանը: 1933-ից՝ Լեհաստանի ԳԱ (Կրակով) թղթակից անդամ, 1939-ից՝ իսկական անդամ: 1945-ից՝ Կրակովի Վավելի դղյակի գեղարվեստական հավաքածուի դիրեկտոր, Կրակովի համալսարանի դոցենտ: Հեղինակ է միջնադարյան Ուկրաինայի և Լեհաստանի արվեստի պատմությանը նվիրված 200-ից ավելի աշխատությունների: Հետազոտել է Արևմտյան Ուկրաինայի XIV—XVIII դդ. հայկ. գաղթավայրերի արվեստը: Գրել է «Լվովի հայերի արվեստը» (Կրակով, 1934—35), «Արևելքը լեհական գեղարվեստական մշակույթում» (Վարշավա—Վրոցլավ—Կրակով, 1959) մենագրությունները, հոդվածներ (նաև հայերեն) նվիրված Լվովի հայկ. ճարտ. հուշարձաններին, Ուկրաինայում ստեղծված հայկ. ձեռագրերի կազմերին, մանրանկարներին: Մ-ի աշխատությունները արժեքավոր են փաստացի նյութի ընդհանրացմամբ, սակայն նրա այն թեզը, թե հայերը XV—XVIII դդ. Ուկրաինայում ինքնատիպ գեղարվեստական արժեքներ չեն ստեղծել, այլ եղել են միայն իսլամի արվեստի պրոպագանդիստներ ու տարածողներ՝ գիտական քննադատության չի դիմանում:

Գրկ. Գալստյան Ջ. Հ., Տադեուշ Մանկովսկին միջնադարյան Լեհաստանի հայկական արվեստի հետազոտող, «ԼՀԳ», № 3, Ե., 1966:
*Յա. Դաշկևիչ*

**ՄԱՆՀԱՅՄ** (Mannheim), քաղաք և նավահանգիստ Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության Բադեն Վյուրտեմբերգ երկրում, Հռենոս գետի աջ ափին: 323 հզ. բն. (1978): Տրանսպորտային խոշոր հանգույց է, արդ. կենտրոն: Լյուդվիգսհաֆեն քաղաքի հետ կազմում է արդ. ագլոմերացիա: Զարգացած է մեքենաշինությունը, քիմ., թաղանթանյութի, տեքստիլ և սննդհամի արդյունաբերությունը: Մ-ի շրջանում կա նավթավերամշակման խոշոր գործարան: Մ-ում գործում են առևտրական, երաժշտաթատերական բարձրագույն դպրոցներ, ինժեներական ուսումնարան, կիրառական օպտիկայի ինստ.: Առաջին անգամ հիշատակվել է 766-ին, քաղաք է 1607-ից:

**ՄԱՆՀԱՅՄԻ ԱԶԳԱՅԻՆ ԹԱՏՐՈՆ**, գերմանական դրամատիկական թատրոն Մանհայմում (այժմ՝ ԳՖՀ-ում): Բացվել է 1777-ին՝ որպես «Պալատական և Ազգային թատրոն»: 1778—1803-ին թատրոնը ղեկավարել է Վ. Հ. ֆոն Դալբերգը՝ թատերախումբ հրավիրելով Ա. Վ. Իֆլանդին, Հ. Բեկին, Ի. Դ. Բեյլի՛ և ուրիշների: Բեմադրվել են Լեսինգի, Գյոթեի պիեսները, առաջին անգամ (1782)՝ Շիլլերի «Ավազակները»: 1783—84-ին թատրոնի դրամատուրգն էր Ֆ. Շիլլերը: Այդ շրջանում է կազմավորվել դերասանական խաղի, այսպես կոչված, մանհայմյան դպրոցը՝ կապված Կ. Էկհոֆի և Ֆ. Լ. *Շրյոդերի* ռեալիստական ավանդույթներին: XIX դ. սկզբին խաղացանկում գերակշռել են Ա. Կոցեբուի և Իֆլանդի սենտիմենտալ, պահպանողական դրամաները, դերասանական խաղում ուժեղացել կենցաղային տարրերը: XIX դ. կեսերին, XX դ. սկզբին Մ. ա. թ. չէր տարբերվում գերմ. գավառային բուրժ. թատրոններից: Երկրորդ հա-

մաշխարհային պատերազմի ժամանակ թատրոնի շենքը ավերվել է: 1945—56-ին ներկայացումներ են տրվել ժամանակավոր շենքերում: Բեմադրվել են պացիֆիստական պիեսներ, ինչպես և համաշխարհային դրամատուրգիայի (այդ թվում՝ Բ. Բրեխտի) լավագույն գործերը: 1956-ին թատրոն է հրավիրվել ռեժիսոր Է. *Պիսկատոր*ը: Թատրոնի նոր շենքը բացվել է 1957-ին՝ Շիլլերի «Ավազակներ»-ի ներկայացումով (ռեժ.՝ Է. Պիսկատոր): Լավագույն դրամատիկական գործի համար սահմանվել է շիլլերյան մրցանակ (1959-ին շնորհվել է շվեյց. թատերագիր Ֆ. Դյուրենմաթին): Սակայն խաղացանկում գերակշռում են դետեկտիվ դրամաները, վոդևիլները, կատակերգությունները, ռոռետևսական պիեսները:

**ՄԱՆՁՈՆԻ** (Manzoni) Ալեքսանդրո (1785—1873), իտալացի գրող: Վաղ շրջանի ստեղծագործություններում Մ. հավատարիմ է մնացել Լուսավորականության ավանդույթներին: 1820-ական թթ.



Ա. Մանձոնի

անցել է ռոմանտիզմի դիրքերը: Նրա «1821 թվականի մարտը» և «Մայիսի 5-ը» (1821) ներբողները, հայրենասիրությամբ, ազատասիրությամբ տոգորված «Կոմս Կարմանյոլա» (1820) և «Ադելգիզ» (1822) պատմական ողբերգությունները արձագանքն են ռիսորջիմենտոյի գաղափարների: Մ-ի լավագույն գործը «Նշանվածները» (1827, հայ. հրտ. 1927, 2 հրտ. 1965) վեպն է, որը նշանակալի տեղ է գրավում XIX—XX դդ. իտալ. ռեալիստական արձակում: 1827-ից Մ. հանդես է եկել միայն լեզվի ու գրականության մասին տեսական հոդվածներով:

*Երկ.* Խոսեցեալք, հ. 1—2, Վնտ., 1875:

**ՄԱՆՅԱԿ**, վզնոց, կանացի պարանոցի զարդ: Առաջին Մ-ները ի հայտ են եկել դեռևս քարի դարում և պատրաստված են եղել մանր սերդուլիկե ուլունքներից, փոքրիկ խխունջներից ու վայրի կենդանիների ատամներից: Նման Մ-ներ կրել են և՛ կանայք, և՛ տղամարդիկ: Մետաղի գործածության հետ Մ-ներն ստանում են բազմազան ձևեր, որոնցից ամենատարածվածը բրոնզե հաստ՝ ոլորված կամ հարթ, վզին հանգուցելու համար ծայրերը դեպի դուրս ծռած լարից Մ-ներն էին: Գործածվել են նաև թելի վրա շարված ազատ, սերդուլիկե, ոսկրե, բրոնզե, կապարե ուլունքներից Մ-ներ՝ մեկընդմեջ անցկացնելով բրոնզե փոքրիկ խողովակներ կամ կախելով բրոնզե ու կապարե կախիկներ: Ենթադրվում է, որ Մ. ունեցել է մոգական նշանակություն: Հետագայում Մ-ները պատրաստել են հիմնականում ոսկուց և արծաթից՝ ձուլման, դրվագման, փորագրման, մանրաբուրք և այլ եղանակներով: Մ-ներն ունեին տերևի, տզրուկի, զարու հատիկի, գնդի և այլ ձևի կախիկների շարան, հաճախ զարդարվում էին ուլունքներով և թանկարժեք քարերով:



Արծաթե մանյակ (Կարին, XIX դ.)

XIX դ. Հայաստանում թանկարժեք Մ-ներ պատրաստել են Կարինում, Վանում, Արծկեում, Մուշում, Ալեքսանդրապոլում և այլուր: Այժմ Մ. գործածվում է հազվադեպ:

*Գրկ.* Սամուելյան Խ., Հին Հայաստանի կուլտուրան, հ. 2, Ե., 1941: Ղաֆադարյան Կ. Գ., Դվին քաղաքը և նրա պեղումները, Ե., 1952: Мартиросян А. А., Армения в эпоху бронзы и раннего железа, Е., 1964. *Ն. Ավագյան*

**ՄԱՆՅԱՆԻ** (Magnani) Աննա (1908—1973), իտալացի դերասանուհի: Կինոյում նկարահանվել է 1934-ից: Նրա առաջին հաջողությունը «Թերեզա-Ուրբաթ» (1941, ռեժ. Վ. դե Սիկա) ֆիլմի գլխավոր հերոսուհու դերն է: *Նեոռեալիզմի* ամենաաչքի ընկնող դերասանուհիներից է: Խաղացել է նեոռեալիստ ռեժիսորների մի շարք ֆիլմերում (Ռոսելինիի «Հռոմ՝ բաց քաղաք», 1945, Լ. Զամպայի «Դեպուտատ Անջելինան», 1947, Կամերինիի «Երազանքներ ճանապարհին», 1948, Լ. Վիսկոնտիի «Ամենագեղեցիկը», 1951 ևն): 1950-ական թթ. կեսին նկարահանվել է Հոլիվուդում



Ա. Մանյանին «Դժոխք քաղաքի մեջ» (1959) կինոնկարում

(«Դաջված վարդը», 1955 ևն): Վերադառնալով Իտալիա՝ խաղացել է «Միանձնուհի Լետիցիան» (1957), «Դժոխք քաղաքի մեջ» (1959) ֆիլմերում: Մ-ի ամենանշանավոր աշխատանքը «Մամա Ռոմա» (1961, ռեժ. Պազոլինի) կինոնկարի գլխավոր հերոսուհու դերակատարումն է: Թատրոնում խաղացել է Ջ. Վերգայի «Էգ գայլ» ներկայացման գլխավոր դերը (հյուրախաղեր ՍՍՀՄ-ում՝ 1965): 1970-ից նկարահանվել է գլխավորապես հեռուստաֆիլմերում:

**ՄԱՆՅՈՒՇԻՍ** Իոսիֆ Անտոնովիչ [ծն. 12(25).12.1910], սովետական պետական և կուսակցական գործիչ: Տնտեսագիտության դ-ր (1970): ՍՄԿԿ անդամ 1945-ից: 1938—1941-ին որպես ինժեներ աշխատել է Կիևում, Բերդիչևում, Լենինգրադում: 1941—1944-ին ծառայել է բանակում, մասնակցել՝ Հայրենական մեծ պատերազմին: 1944—50-ին աշխատել է Վիլնյուսի, ապա՝ Կաունասի քաղգործկոմներում: 1950—1954-ին եղել է Լիտվական ՍՍՀ շինարարության, 1954—55-ին՝ քաղաքային և գյուղական շինարարության մինիստր, 1955—1967-ին՝ ԼԿԿ ԿԿ քարտուղար, 1967-ի ապրիլից՝ ԼՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ: ՍՄԿԿ XXIV—XXV համագումարներում ընտրվել է ՍՄԿԿ ԿԿ անդամության թեկնածու: ՍՍՀՄ VI—X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ է: Պարգևատրվել է Լենինի և չորս այլ շքանշաններով:

**ՄԱՆՆԵՍՄԱՆ** (Mannešmann), Մաքս (1857—1915) և Ռեյնհարդ (1856—1922) եղբայրներ, գերմանացի ինժեներներ և ձեռնարկատերեր, անկար խողովակների արտադրության եղանակի գյուտարարներ: 1855-ին հայտնագործել են կտրիչ գրտնակով, իսկ 1891-ին՝ նախագծել անկար խողովակների պատրաստման սղոցվող հաստոցը: 1890-ին, օգտագործելով իրենց արտոնագրերը, կազմակերպել են խողովակագլոցման արտադրության մեջ խոշորագույն «Մաննեսմանրյորեն վերկե» մետալուրգիական կոնցեռնը: Գյուտեր են արել նաև տեխնիկայի այլ բնագավառներում (օրինակ, պողպատի ցեմենտում, խարտոցների արտադրություն):

**ՄԱՆՆԻԽԻ ՌԵԱԿՑԻԱ**, ամինամեթիլացում, ջրածնի շարժուն ատոմ պարունակող օրգանական միացություններում այդ ջրածինը ամինամեթիլ խմբով՝ $—CH_2N=$ տեղակալելու ռեակցիա: Իրականացվում է օրգ. միացության, մրջնալդեհիդի և ամոնիակի կամ ամինների փոխազդեցությամբ՝



$$CH_3COCH_3+CH_2O+(CH_3)_2NH\cdot HCl\rightarrow$$
$$\rightarrow CH_3CO\cdot CH_2\cdot CH_2N(CH_3)_2\cdot HCl+H_2O$$

Մ. ռ. կիրառվում է օրգ. սինթեզում և օգտագործվում դեղանյութերի արդյունաբերության մեջ: Ռեակցիան հայտնաբերել է գերմ. քիմիկոս Ք. Մաննիխը (C. Mannich, 1917):

**ՄԱՆՆՈԶ**, $C_6H_{12}O_6$, միաշաքար, *գլյուկոզի* իզոմեր: Մոլ. զանգվածը՝ 180,16: Լավ լուծվում է ջրում, հալ. ջերմաստիճանը՝ 132°C: Չի լուծվում եթերում և օրգ. այլ լուծիչներում: Մտնում է բուսական, կենդանական և բակտերային բազմաթիվ բազմաշաքարների բաղադրության մեջ: Հայտնի է α- և D-ձևով: Բնության մեջ հանդիպում է D-ձևը: Ազատ վիճակում պարունակվում է ցիտրուսային բույսերի պտուղներում, քարընկույզի կեղևում, զարու, ցորենի հատիկներում ևն: Մ. օքսիդանալիս առաջացնում է D-մաննոնաթթու և մաննոնաշաքարաթթու, վերականգնվելիս վերածվում է մաննիտի:

**ՄԱՆՈԼՈՎ** Էմանուիլ (1860—1902), բուլղարացի կոմպոզիտոր, դիրիժոր, մանկավարժ: 1881—83-ին սովորել է Մոսկվայի կոնսերվատորիայում, 1886-ից աշխատել է Բուլղարիայում: Բուլղ. կոմպոզիտորա-

կան դպրոցի հիմնադիրներից է, բուլղարացի առաջին խմբավարն ու զինվորական կապելմայստերը: Ստեղծագործությունը՝ ժող. երգերի մշակումներ, երգեր ու խմբերգեր և «Մուրացիկը» բուլղ. առաջին օպերան (անավարտ), մեծ դեր է կատարել Բուլղարիայի ազգային պրոֆեսիոնալ երաժշտության ձևավորման մեջ: Մ-ի որդին՝ Խրիստո Մ. (1900—1953), բուլղ. առաջին բալետի («Օձը և Յանան», 1937) հեղինակ է: Մ-ի թոռը՝ Զդրավկո Մ. (ծն. 1925), կոմպոզիտոր է, Բուլղ. պետ. կոնսերվատորիայի պրոֆեսոր:

**ՄԱՆՈՂ ՄԵՔԵՆԱ**, նախաթելից կամ ժապավենից մշակում է *մանվածք*, ավարտում մանրաթելային նյութի մշակումը մանման արտադրության մեջ: Ըստ կիրառվող մանրաթելի տեսակի տարբերում են բամբակի, կեղևային *մանրաթելերի*, բրդի, մետաքսի մնացորդների Մ. մ-ներ. Քիմ. մանրաթելից մանվածք ստանում են բնական մանրաթելերի մանման մեքենայով: Բոլոր տեսակի մանրաթելերը մանելու համար հիմնականում կիրառվում է անընդհատ գործողության օ ղ ա վ ո ր Մ. մ., որը բարակեցնում է կիսաֆաբրիկատը, գոլացնում ժապավենը, ոլորում և փաթաթում մանվածքը: Բամբակի մանման երկկողմանի օղավոր Մ. մ-ում (նկ. ) նախաթելը, կոճից արձակվելով, մտնում է ձգիչ սարքի սնող զույգի մեջ: Դուրս եկող ժապավենը ոլորվում է, ստացված մանվածքը մտնում է թելուղղիչ, անցնում օղակի վրա հագցված աղեղիկով, ապա փաթաթվում իլիկի վրա հագցված թելակոճի կամ կապիչի վրա: Ստեղծվել են ա ն ի լ ի կ Մ. մ-ներ, որոնք իրականացնում են սնող արտադրանքի դիսկրետացումը (առանձին մանրաթելերի անջատումը), մանրաթելերի դիսկրետ հոսքի փոխազդումը, անընդհատ արտադրանքի ձևավորման համար դրանց միացումը կամ խտացումը, մանվածքի ոլորումը և փաթաթումը: Այդ մեքենաներից արդյունաբերության մեջ տարածում է ստացել պ ն և մ ո մ ե խ ա ն ի կ ա կ ա ն Մ. մ.:



Օ ղ ա վ ո ր մ ա ն ո ղ մ ե ք ե ն ա յ ի ս խ ե մ ա ն. *1*. նախաթելով կոճեր, *2*. ձգիչ սարք, *3*. թելուղղիչ, *4*. իլիկ, *5*. աղեղ, *6*. օղ

**ՄԱՆՈՄԵՏՐ** (< հուն. μανός — նոսր և ... *մետր*), հեղուկների և գազերի ճնշումը չափելու սարք: Լինում են զրոյից (լրիվ վակուումից) հաշվարկվող բ ա ց ա ր ձ ա կ ճ ն շ մ ա ն, ա վ ե լ ց ո ւ կ ա յ ի ն ճ ն շ մ ա ն (բացարձակ և մթնոլորտային ճնշումների տարբերությունը, երբ բացարձակ ճնշումը մեծ է մթնոլորտայինից)









Նկ. 1. *ա*. աղեղաձև խողովակային զսպանակով, *բ*. պտուտակաձև խողովակային զսպանակով, *գ*. թիթեղային զսպանակով, *դ*. սիլֆոնային մանոմետրերի սխեման

չափումների համար նախատեսված Մ-եր և դ ի ֆ մ ա ն ո մ ե տ ր ե ր, որոնցով չափում են մթնոլորտայինից տարբեր երկու ճնշումների տարբերությունը: Մթնոլորտայինին հավասար ճնշումների չափման համար կիրառվում է *բարոմետրը*, իսկ զրոյին մոտ ճնշումների համար՝ *վակուումաչափը*: Մ-երի սանդղակներն աստիճանավորված են լինում տարբեր միավորներով՝ *կԳ/մ*$^2$ կամ *կԳ/սմ*$^2$, *բար*, *մմ սնդ. ս.*, *մմ ջր. ս.*, *պա* ևն: Մ-ի հիմնական կառուցվածքային տարրը զգայուն տարրն է՝ ճնշման սկզբնական փոխակերպիչը: Ըստ աշխատանքի սկզբունքի և զգայուն տարրի կառուցվածքի, Մ-երը լինում են զսպանակավոր (խողովակային, մեմբրանային, սիլֆոնային, նկ. 1), հեղուկային (նկ. 2, 3), մխոցավոր, դեֆորմացիոն: Կիրառվում են նաև այն սարքերը, որոնց աշխատանքը հիմնված է ճնշման ազդեցությամբ տարբեր նյութերի ֆիզիկական հատկությունների փոփոխությունների չափման վրա: Ժամանակակից Մ-երի մեծ մասը մի քանի ֆունկցիոնալ բլոկներից բաղկացած չափիչ բարդ սարքեր են: Ցուցմունքներն անմիջականորեն գրանցող կամ հաշվարկող Մ-երից բացի լայնորեն կիրառվում են նաև, այսպես կոչված, անսանդղակ Մ-երը (պնևմատիկ կամ էլեկտրական միասնականացված ելքային ազդանշաններով), որոնք օգտագործվում են վերահսկման, ավտոմատ կարգավորման և տեխնոլոգիական տարբեր պրոցեսների կառավարման համակարգերում:



Նկ. 2. Ս-աձև խողովակով հեղուկային մանոմետրի սխեման

Նկ. 3. գավաթավոր հեղուկային մանոմետրի սխեման

**ՄԱՆՉԵՍՏԸՐ** (Manchester), քաղաք-կոմսություն Մեծ Բրիտանիայում, Լանկաշիրի տերիտորիայում: Գտնվում է Պենինյան լեռների արմ. լանջին, Էրուել գետի ափին: 616 հզ. բն. (1978), կոնուրբացիայով՝ 2,6 մլն: Մ. Հարավ-Արևելյան Լանկաշիրի «տեքստիլ» քաղաքների (ընդգրկում է 52 քաղաք) կոնուրբացիայի ինդուստրիալ, առևտրա-ֆինանսական և տրանսպորտային խոշոր կենտրոնն է, ծովային նավահանգիստ: Ունի օդանավակայան: Տնտեսապես ակտիվ բնակչության 2/5-ը զբաղված է արդյունաբերության, ավելի քան 2/5-ը՝ առևտրի և սպասարկման ոլորտում: Մ-ում զարգացած է բազմաճյուղ մեքենաշինությունը, քիմ., կարի արդյունաբերությունը: Մ. երկրի գիտական և մշակութային կենտրոն է (համալսարան ևն): Առաջին անգամ հիշատակվել է X դ.: Պահպանվել են XV—XVI և XIX դդ. ճարտ. հուշարձաններ, Մ-ում ապրել և գործել է (1842—1844 և 1850—70) Ֆ. Էնգելսը և այն կոչել աշխարհի առաջին ֆաբրիկային քաղաքը:

Հ ա յ ե ր ը Մ ա ն չ ե ս տ ր ո ւ մ: Մ-ի հայ համայնքը հիմնվել է 1863-ին, թեև հայերը (պոլսեցի վաճառականներ) Մ-ում երևացել են 1830-ական թթ.: 1863-ի մարտին ընտրվել է գաղութային վարչություն: Գաղութի ներքին գործերը տնօրինելու համար 1866-ին մշակվել է կանոնագիր, որը վերջնականապես հաստատվել է 1901-ին: Գաղութը ղեկավարող գործադիր մարմինը ընտրվում էր ընդհանուր ժողովում, 2 տարին մեկ անգամ: 1870-ին հայերը կառուցել են եկեղեցի (Ս. Երրորդություն, գործում է ցայսօր): 1911-ին Մ-ում բնակվող հայերի՝ թիվը հասել է 550-ի, որը զգալիորեն մեծացել է առաջին համաշխարհային պատերազմի և ետպատերազմյան տարիներին, սակայն աստիճանաբար նվազել է հայերի՝ այլ վայրեր տեղափոխվելու հետևանքով: 1965-ին Մ-ում հաշվվում էր 400 հայ, 1981-ին՝ 100: Մշտաբնակ հայերից բացի Մ-ում զգալի թիվ են կազմում Իրանից, Իրաքից, Լիբանանից սովորելու եկած հայ ուսանողները (1980-ին շուրջ 150 մարդ), որոնք ստեղծել են «Էրեբունի»

միությունը: 1907-ից գործում է ՀԲԸՄ Մ-ի մասնաճյուղը:

Մ-ի հայ համայնքը գործուն մասնակցություն է ունեցել հայ ազգային կյանքին: 1875-ին մանչեստրահայերը հիմնել են ընկերություն, որի նպատակն էր օգնել Հայաստանի դպրոցներին, պաշտպանել հայերի իրավունքները և բարոյապես ու նյութապես աջակցել նրանց: Մ-ի հայ գաղութը աշխուժություն է ապրել Բեռլինի կոնգրեսի (1878) նախօրյակին, երբ Լոնդոն և Մ. է այցելել Մկրտիչ Խրիմյանը (Հայրիկը), կազմակերպվել են հրապարակային ելույթներ, զեկուցումներ ևն:

Անգլիայում առաջին հայ պարբերականը՝ «Երկրագունդ»-ը, հրատարակվել է Մ-ում, 1863—64-ին (խմբագիր՝ Կ. Շահնազարյանց): 1898-ին լույս է տեսել «Վաղվան ձայնը» (խմբագիր՝ Ս. Պարթևյան) ազգային, գրական ամսաթերթը, 1900—1901-ին՝ «Եկեղեցի Հայաստանեայց» (11 համարից հետո՝ «Հայ եկեղեցի») կրոնական-աստվածաբանական հանդեսը (խմբագիր՝ Թորոս Զուռնայեցի):

*Գրկ.* Մուշեղ եպիսկոպոս (Սերոբյան), Մանչեստրի հայ գաղութը, Բոստոն, 1911: *Պ. Մարտիրոսյան*

**ՄԱՆՋԱԼԸԽ**, Մ ա ն ճ ը լ ը ք, գյուղ Արևմտյան Հայաստանում, Սեբաստիայի վիլայեթի համանուն գավառում: 1914-ին ուներ մոտ 300 տուն (2400 անձ) հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ, արհեստներով և առևտրով, մասամբ՝ անասնապահությամբ: Կար եկեղեցի և դպրոց: Բնակիչները զոհվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ:

**ՄԱՆՋՈՒԽՈՒՆ**, գյուղ Թուրքիայում, Կեսարիայի գավառում: 1915-ին ուներ մոտ 100 տուն հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Գյուղում կար եկեղեցի և դպրոց: Բնակիչները տեղահանվել և զոհվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ:

**ՄԱՆՋՈՒՐԵՐԵՆ**, տես *Տունգուս-մանջուրական լեզուներ*:

**ՄԱՆՋՈՒՐՆԵՐ** (ինքնանվանումը՝ մ ա ն չ ժ ո ւ ն յ ա լ մ ա), Հյուսիս-Արևելյան Չինաստանի բնակչությունը: Բնակվում են հիմնականում Հարավային Մանջուրիայում: Թիվը՝ մոտ 3 մլն (1981): Մանջուրերենը պահպանված է գլխավորապես Հեյլունցզյան գավառի գյուղական բնակչության մեջ: ՉԺՀ-ի այլ շրջաններում Մ. խոսում են չինարեն: Հավատացյալ Մ. բուդդայականներ և դաոսականներ են, որոշ մասի մեջ պահպանվում է շամանականությունն ու նախնիների պաշտամունքը: Մ. հիմնականում զբաղվում են հողագործությամբ (հացահատիկ, քնջութ, բանջարեղեն ևն), որոշ մասն աշխատում է արդյունաբերության մեջ:

**ՄԱՆՍԱՐ** (Mansart) Ֆրանսուա (1598—1666), ֆրանսիացի ճարտարապետ: XVII դ. ֆրանս. կլասիցիզմի հիմնադիրներից: Աշակերտել է Ս. դը Բրոսսին: Մ-ի կառույցներում (Բլուայի դղյակը, վերակառուցվել է 1635—38-ին, Մեզոն-Լաֆֆիտ պալատը, 1642—50, Փարիզում՝ Վալ դե Գրաս եկեղեցին, 1645—46, շինարարությունը շարունակել է Ժ. Լեմերսիեն, Կառնավալե հյուրանոցը, վերակառուցվել է 1660—1661-ին ևն) ճակատների պլաստիկ, ճոխ հարդարանքը (բարոկկոյի տարրերով) համադրված է ընդհանուր ծավալա-տարածական հորինվածքի պարզությանն ու հստակությանը, կանոնավոր հատակագծին:

**ՄԱՆՍԱՐԴ**, սենյակ (հիմնականում՝ բնակելի) շենքի ձեղնահարկում, որի տանիքի լանջերը երկթեք են: Մ-ները տալիս են լրացուցիչ օգտակար մակերես, արտաքուստ հարստացնում են շենքի ծավալը, ճարտարապետական-գեղարվեստական կերպարը: Տանիքի այս կառուցվածքը լայնորեն կիրառել է ֆրանսիացի ճարտ. Ֆ. *Մանսարը* (այստեղից էլ՝ անվանումը):



Մանսարդ (գծագիրը՝ ըստ Ֆ. Մանսարի)

**ՄԱՆՍԻՆԵՐ**, ժողովուրդ, ՌՍՖՍՀ Տյումենի մարզի Խանտի-Մանսիական Ինքնավար Օկրուգի արմատական բնակչությունը: Ապրում են Օբ գետի ավազանում (գլխավորապես Կոնդա, Հյուսիսային Սոսվա ևն ձախակողմյան վտակների, ինչպես և Բերյոզովա քաղաքի շրջանում), մի մասը՝ ՌՍՖՍՀ Սվերդլովսկի մարզում: Թիվը՝ 7,6 հզ. (1979): Խոսում են մանսիերեն, շատերը՝ նաև ռուս.: XVII դ. սկզբից կրոնով համարվել են ուղղափառներ, սակայն պահպանել են մինչքրիստոնեական շրջանի զանազան հավատալիքներ (տոհմական պաշտամունք, շամանիզմ ևն): Ազգակից են *խանտերին*: XI դարից հիշատակվում են «յուգրեր» (խանտերի հետ միասին), իսկ XIV դարից՝ «վոգուլիչներ», «վոգուլներ» անվանումներով:

Մ. զբաղվում են հիմնականում ձկնորսությամբ, որսորդությամբ, մասամբ՝ եղջերվաբուծությամբ, ինչպես և հողագործությամբ, անասնապահությամբ ու մորթատու գազանների բուծմամբ: Մի մասն աշխատում է արդյունաբերության մեջ:

*Գրկ.* Народы Сибири, М.—Л., 1956.

**ՄԱՆՍԻՍԻԴՈՐ** (Mancisidor) Խոսե (1895—1956), մեքսիկացի գրող, հասարակական գործիչ: Մասնակցել է Մեքսիկայի հեղափոխությանը (1910—17): 1930-ական թթ. գլխավորել է առաջադեմ գրողների «Նոյեմբեր» («Noviembre») խմբակը և խմբագրել նրա «Ռուտա» («Ruta», 1933—39) հանդեսը: Երկրորդ համաշխարհային պատերազմի (1939—45) տարիներին եղել է Սովետական Միության բարեկամների ընկերության, 1950-ական թթ.՝ Մեքսիկառուսական մշակույթի ինստ-ի նախագահը: 1935-ին գլխավորել է Մեքսիկայի հեղափոխական գրողների և նկարիչների լիգան: Հրատարակել է «Խռովություն» (1931), «Իսպանացի մոր մասին» (1938) պատմվածքները, «Կարմիր քաղաք» (1932), «Քամիների փարոս» (1941), «Սահման՝ ծովի մոտ» (1953), «Արշալույսը անդունդի վրա» (1955) վեպերը: Լույս է ընծայել հրապարակախոսական աշխատություններ Կ. Մարքսի, Վ. Ի. Լենինի, Մ. Գորկու, Ա. Բարբյուսի, Է. Զոլյայի մասին և ճանապարհորդական ակնարկներ («120 օր», 1937) ՍՍՀՄ-ի մասին:

**ՄԱՆՍՈՒՐ** Աբու Ջաֆար (707—775), խալիֆա 754-ից: *Աբբասյանների* դինաստիայից: Մ. (նշանակում է «Հաղթական») ամրապնդել է Աբբասյանների նորաստեղծ պետությունը: Անց է կացրել վարչականֆինանսական ռեֆորմներ. ծանրացրել է հարկերը (*Արմինիա* նահանգը տարեկան վճարել է 13 մլն արծաթ դիրհեմ), 762-ին հիմնել է Բաղդադը, որը դարձել է խալիֆայության մայրաքաղաքը: Մ-ի օրոք Հայաստանում բռնկվել է (774—775) ապստամբություն Մուշեղ Մամիկոնյանի գլխավորությամբ, և մոտ մեկ տարի երկիրը գտնվել է ապստամբների ձեռքին:

*Գրկ.* Тер-Гевондян А. И., Армения и арабский халифат, Е., 1977, с. 105—110.

**ՄԱՆՍՈՒՐՅԱՆ** Տիգրան Եղիայի (ծն. 27.1. 1939, Բեյրութ), հայ սովետական կոմպոզիտոր: 1947-ին ներգաղթել է Հայաստան: Երաժշտական սիստեմատիկ կրթություն ստացել է 1956-ից՝ Ռ. Մելիքյանի անվ. երաժշտ. ուսումնարանում (Է. Բաղդասարյանի կոմպոզիցիայի դասարան): 1965-ին ավարտել է Երևանի կոնսերվատորիայի ստեղծագործական բաժինը (Ղ. Սարյանի դասարան): 1967-ից դասավանդում է նույն կոնսերվատորիայում (ժամանակակից երաժշտության տեսություն): Մ-ի ստեղծագործությունը, որ 1960—70-ական թթ. սովետահայ երաժշտության բնորոշ միտումների ստեղծագործական իրականացման ցայտուն դրսևորումներից է, XX դ. համաեվրոպական երաժշտության նվաճումների և ազգային երաժշտ. մշակույթի լավագույն ավանդույթների միաձուլման համոզիչ օրինակ է: Կոմպոզիտորի երաժշտ. լեզվում առանձնակի նշանակություն է ձեռք բերում գեղագիտական նոր հիմքի վրա կոմիտասյան սկզբունքների վերածնունդը (երաժշտ. բանվածքի տարածական կազմակերպում, առանձին հնչյունների իմաստային ընդգծում): Գրել է. սիմֆոնիկ նվագախմբի համար՝ «Պարտիտա» (1965), «Պրելյուդներ» (1975), «Գիշերային երաժշտություն» (1980), լարային կվարտետ «Ինտերիեր» (1972), կոնցերտ երգեհոնի և կամերային անսամբլի համար (1964), թավջութակի 2 կոնցերտ (1976, 1978), Ջութակի կոնցերտ (1978), վոկալ շարքեր՝ «Ռոմանսներ Գարսիա Լորկայի խոսքերով» (1966), «Տետր ողբագին տաղերգության» (1966), «Նահապետ Քուչակի չորս հայրենները» (1967), «Վարդի նվեր» (1974), «Սրնգահար լուսին», «Նաիրյան երեք երգ» (երկուսն էլ՝ 1976), խմբերգեր՝ «Երեք աղացված Կոմիտասի հիշատակին» (1969), կամերայինգործիքային երկեր, սոնատներ, երաժշտություն կինոնկարների («Նռան գույնը», «Մենք ենք, մեր սարերը», «Վերադարձ», «Սզավոր ձյունը», «Կտոր մը երկինք»), դրամատիկական ներկայացումների («Մեհերի դուռ», «Միրանի ծառ») համար:

**ՄԱՆՎԱԾՔ**, թել, որը կազմված է ոլորմամբ (երբեմն՝ սոսնձմամբ) միացված մանրաթելերից: Օգտագործվում է գործվածքներ, տրիկոտաժ, թելեր, ճոպաններ ևն պատրաստելու համար: Ստանում են բամբա-

կից, բրդից, մետաքսի, քիմ. մանրաթելերի մնացուկներից են: Տարբերում են համասեռ (միատեսակ մանրաթելերից կազմված) և խառը (մանրաթելերի խառնուրդից կազմված) Մ.: Մ-ի հիմնական բնութագրերն են՝ հաստությունը (տես *Տեքս*), ոլորման աստիճանը, հավասարաչափությունն ըստ հաստության, ամրությունը, ինչպես նաև մաքրությունը (արատների բացակայությունը):

**ՄԱՆՎԵԼ (ՍՏԵՓԱՆՈՍ) ԿՅՈՒՄՈՒՇԽԱՆԵՑԻ**, Գյումուշխանեցի [1.1. 1768, Գյումուշխանե — 4.12.1843, Հին Ղրիմ (թաղվել է հայոց Ս. Խաչ վանքում)], հայ մատենագիր, եկեղեցական գործիչ: Կրթությունն ստացել է ծննդավայրում, ապա՝ Կարինում: 1796-ին ձեռնադրվել է վարդապետ: 1802-ին անցել է Ռուսաստան, աշխատել Պետերբուրգում (այժմ՝ Լենինգրադ), Գրիգորիուպոլսի (1804—12), Ղրիմի (1813—27) հայկ. գաղութներում, հիմնել դպրոցներ, կրթել հայ մանուկներին: Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումից հետո (1828) եկել է Էջմիածին, կարգավորել վանքի մատենադարանը, կորստից փրկել մշակութային արժեքներ: Գործել է Խոր Վիրապ և Սևանա վանքերում (1828—30), Տփղիսում (այժմ՝ Թբիլիսի, 1830—36), ապա վերադարձել Ղրիմ: Գրել է պատմական («Կշիռ որպիսածանոյց», 1803, «Պատմութիւն եղելութեանց ընդ մէջ կաթողիկոսացն Դանիէլի և Դաւթի», 1803, «Պատմութիւն անցից անցելոց Սեւանայ վանուց», 1830, հրտ. 1871), հուշագրական («Համառօտութիւն ծննդեան և դիպուածոց...», 1830—39, «Աղէտ գիտելեաց մերոց», 1831), կրոնաբարոյախոսական («Դպրութիւն մանկանց», աշխարհաբար դասագիրք, 1821, «Լուծ արմատոյն մերոյ», 1832, հրտ. 1841), դավանաբանական («Դեղաթափ ընդդէմ լիւթերականաց աղանդին», 1836, Նամակ Մխիթարյաններին, 1814) և այլ երկեր, թղթեր, որոնք կարևոր սկզբնաղբյուրներ են և հարուստ նյութ են պարունակում XVIII—XIX դդ. հայ մշակութային, եկեղեցական ու քաղ. կյանքի, հայ-ռուսական հարաբերությունների մասին: Դրանց ինքնագրերը պահվում են Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանում և այլուր: Մ. Կ. հաճախ հանդես է եկել նաև Շահինյան, Ալթունյան ազգանուններով:

*Երկ.* Անձնական պատմութիւն Մանուէլ Կիւմիւշխանացի վարդապետի, Ալթունեանի կամ Շահինովի, «Դիվան հայոց պատմության», գիրք 12, Թ., 1917:

*Գրկ.* Շահազիզ Ե., Շահինյան Մանվել ծայրագույն վարդապետ Գյումուշխանեցի, «Էջմիածին», 1946, № 6—7: Հակոբյան Պ., Խաչատուր Աբովյան, կյանքը, գործը, ժամանակը (1809—1836), Ե., 1967:

*Պ. Հակոբյան*

**ՄԱՆՎԵԼ ՄԱՄԻԿՈՆՅԱՆ** (ծն. թ. անհտ.— 838 կամ 842-ից հետո), հայազգի բյուզանդական զորավար: *Թեոդորա* կայսրուհու (IX դ.) հորեղբայրը: Զբաղեցրել է բարձր պաշտոններ՝ պրոտոստրատոր, ստրատելատ (զորավար) ևն: Միքայել II-ի օրոք (820—829) անհայտ պատճառներով փախել է Արաբ. խալիֆայություն, ծառայել արաբ. բանակում, խալիֆայությանը ենթարկել Խորասանը: 831-ին, կայսր Թեոփիլոսից ներում ստանալով, վերադարձել է Բյուզանդիա, նշանակվել սխոլերի դոմեստիկոս (սպարապետ): Գործուն մասնակցություն է ունեցել արաբների դեմ մղված պատերազմներին, մարտերից մեկում Թեոփիլոսին փրկել է գերվելուց: 836-ին արաբներից գրավել է Զապետրա (Սոզոպետրա), Սամոսատ քաղաքները, 838-ին մասնակցել է Ամորիոնի կռիվներին (արաբների կողմում մարտնչում էր հայկ. զորքը), որտեղ, ըստ որոշ սկզբնաղբյուրների, սպանվել է: Ըստ Թեոփանեսի Շարունակող պատմիչի, Թեոփիլոսը մահից (842) առաջ Մ. Մ-ին նշանակել է իր մանկահասակ ժառանգի՝ ապագա Միքայել III-ի խնամակալներից մեկը:

*Հ. Բարթիկյան*

**ՄԱՆՎԵԼ ՄԱՄԻԿՈՆՅԱՆ** (ծն. թ. անհտ.— մոտ 385), Հայոց սպարապետ 377-ից: Արտաշես Մամիկոնյանի որդին: Սասանյան արքա Շապուհ II-ի համաձայնությամբ Մ. Մ. ազատվել է պարսից գերությունից, վերադարձել հայրենիք, ստանձնել իր տոհմի նահապետությունը և Հայոց սպարապետի պաշտոնը: Պարսկ. 10 հզ-անոց հեծելազորի օգնությամբ Կարինի դաշտում հաղթել և տապալել է Հայոց թագավոր *Վարազդատ* Արշակունուն, ձերբակալել և սպանել նրա սպարապետ Բատ Սահառունուն: Այնուհետև, հայ նախարարների համաձայնությամբ թագավոր է հռչակել Պապ թագավորի անչափահաս որդի Արշակ Գ-ին (378—389)՝ արքայամայր Զարմանդուխտի հետ ստանձնելով նրա խնամակալությունը: Հ. Մանանդյանի և ուրիշների կարծիքով, Մ. Մ. ընդունել էր Սասանյանների գերիշխանությունը: Որոշ ուսումնասիրողներ հավաստի են համարում Փավստոս Բուզանդի այն վկայությունը, ըստ որի Մ. Մ., օգտվելով Պարսկաստանում տիրող անկայուն ներքին իրադրությունից, կոտորել է պարսկ. զորքերին, 7 տարի ձեռք բերել լիակատար անկախություն և զբաղվել խաղաղ շինարարական գործերով:

*Գրկ.* Փավստոս Բուզանդ, Պատմություն Հայոց, Ե., 1968: Մանանդյան Հ., Երկ., հ. 2, Ե., 1978:

*Ստ. Մելիք-Բախշյան*

**ՄԱՆՎԵԼՅԱՆ** Երվանդ (1872, Կոստանդնուպոլիս —1949, Փարիզ), հայ մանրէաբան, հասարակական գործիչ: ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ (1945): 1891-ին ավարտել է Փարիզի համալսարանի բժշկ. ֆակուլտետը և աշխատել հյուսվածքաբանության լաբորատորիայում, 1902-ից՝ Պաստյորի անվ. ինստ-ում՝ որպես հյուսվածքաբանության և մանրէաբանության լաբորատորիայի վարիչ: Գիտական աշխատանքները վերաբերում են նյարդային համակարգի հյուսվածքաբանության, ծերացման, կատաղության և հատկապես բնածին սիֆիլիսի ուսումնասիրության հարցերին: Մ. եղել է Փարիզի հայ բժիշկների ընկերության անդամ:

**ՄԱՆՎԵԼՅԱՆ** Լևոն Գևորգի (3.12.1864, Ներքին Ագուլիս —21.2.1919, Թիֆլիս), հայ գրող: Նախնական կրթությունն ստացել է Վերին Ագուլիսի ուսումնարանում, որտեղ աշակերտել է Րաֆֆուն: Այնուհետև սովորել է Թիֆլիսի գիմնազիայում: 1890-ին ավարտել է Մոսկվայի համալսարանի պատմալեզվագրական ֆակուլտետը: Դասավանդել է Էջմիածնի Գևորգյան



Լ. Գ. Մանվելյան

ճեմարանում, Թիֆլիսի Ներսիսյան դպրոցում, պաշտոնավարել Բաքվի Հայոց մարդասիրական ընկերությունում: Մ-ի ստեղծագործությունը, որ ամփոփված է «Բանաստեղծություններ և պոեմներ» խորագրով ժողովածուներում (գիրք 1—2, 1899—1907), կապված է անցյալի առաջավոր-դեմոկրատական գրականության ավանդույթների հետ: Մ. հայ գրականության մեջ դրամատիկական պոեմի սկզբնավորողն է («Գալիլեյ և Միլտոն», «Փոթորիկ», «Դեպի վեր», 1902, «Սասունցի Դավիթ և Մսրա Մելիք», հրտ. 1940): Նրա պիեսները նկատելի դեր են կատարել հայ ռեալիստական-հոգեբանական դրամայի զարգացման գործում («Նկարիչ Թաշճյան», 1903, «Դոկտոր Երվանդ Բոշայան», 1900, «Վերածնվածը», 1906, «Մագդա», 1913): 1892-ին լույս է տեսել «Տիգրանուհի» պատմա-դիցաբանական ողբերգությունը: «Խորտակված կյանք» (1897) վեպում ներկայացված է կապիտալիստական իրականության հետ անհատի բախումն ու կործանումը: Մ. զբաղվել է թատերական և գրականագիտական հարցերով, գրել է «Ռուսահայ գրականության պատմություն» (1909—12) աշխատությունը:

*Երկ.* Ընտ. երկ., Ե., 1955:

*Գրկ.* Հայ նոր գրականության պատմություն, հ. 4, Ե., 1972:

*Լ. Ասմարյան*

**ՄԱՆՎԵԼՅԱՆ** Հրանտ Լևոնի [ծն. 3(16).2. 1907, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)], հայ սովետական ռեժիսոր և դերասան: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1960): 1953-ին ավարտել է Մոսկվայի Լունաչարսկու անվ. թատերական ինստ-ի ռեժիսորական ֆակուլտետը: 1931—63-ին աշխատել է Լենինականի, Կիրովականի, Սոխումի քաղաքային, Հոկտեմբերյանի, Դիլիջանի, Նոյեմբերյանի, Էջմիածնի, Արթիկի, Արտաշատի, Կամոյի և այլ շրջանային թատրոններում: 1963-ից աշխատում է Արտաշատի շրջանային թատրոնում: Լավագույն դերերից են՝ Սուրեն (Շիրվանզադեի «Պատվի համար»), Շմագա (Ա. Օստրովսկու «Անմեղ մեղավորներ»), Արթուր («Բոռը», ըստ Վոյնիչի), բեմադրություններից (շուրջ 250)՝ Մ. Գորկու «Վերջինները», Գոգոլի «Ռևիզորը», Վոյնիչի «Բոռը»:

*Վ. Խաչիկյան*

**ՄԱՆՎԵԼՅԱՆ** Մանվել Գարեգինի [ծն. 13(26).9.1913, Վան], հայ սովետական քիմիկոս: ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1963): 1933—40-ին աշխատել է Երևանի պոլիտեխնիկական ինստ-ում, որն ավարտել է 1936-ին, ապա, մինչև 1957-ը՝ ՀՍՍՀ ԳԱ քիմիայի ինստ-ում: Մ. ՀՍՍՀ ԳԱ ընդհանուր և անօրգանական քիմիայի ինստ-ի (1957—70-ին՝ ՀՍՍՀ Ժողտնտխորհրդի քիմիայի ԳՀԻ) կազմակերպիչն ու առա-


Մ. Գ. Մանվելյան


Մ. Գ. Մանվելյան

ջին դիրեկտորն էր (1957—68-ին և 1970—1975-ին): Մ-ի գիտական աշխատանքները վերաբերում են ոչ հանքային հանածոների կոմպլեքսային օգտագործման եղանակների մշակմանը, բարձրորակ ապակիների ստացմանը և ալյումինատային լուծույթների մաքրմանը: Նեֆելինային սիենիտների քիմ. մշակման նրա (աշխատակիցների հետ) առաջարկած եղանակը նախատեսում է կավահողի, ցեմենտի, մետասիլիկատների, մաքուր սիլիկահողի և այլ նյութերի միաժամանակյա ստացումը: Բացահայտել է մետասիլիկատների (որպես լվացող միջոցների) և սիլիկահողի (օպտիկական ապակի և բյուրեղապակի) տեխ. կիրառման ոլորտները: Ընտրվել է ՀՍՍՀ V, VI գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Պարգևատրվել է Կարմիր դրոշի շքանշանով:

*Երկ.* Обескремнивание щелочных алюминатных растворов, Е., 1973 (соавтор Ханамирова А.); Спектроскопия активированных фторобериллантных стекол, Е., 1974 (соавтор Маргарян А. Ш.).

**ՄԱՆՎԵԼՅԱՆ** Միքայել Գևորգի [14(26).2. 1877, Ագուլիս —7.10.1944, Երևան], հայ դերասան, թատերագիր, արձակագիր: ՀՍՍՀ ժող. արտիստ (1935): Բեմական գործունեությունն սկսել է 1895-ից, Թիֆլիսի հայկ. թատերախմբերում: 1903—1905-ին ուսանել է Մոսկվայում՝ Ի. Ուտնաց-Ռայսկայայի դրամատիկական դասընթացներում: 1905-ից հանդես է եկել գլխավորապես Հայոց դրամատիկական ընկերության խմբում՝ Թիֆլիսի Արտիստական թատրոնի բեմում: Անձնավորել է ավելի քան 100 դեր: Դրանցից մի քանիսը


Մ. Մանվելյանը Շայլոկի դերում (Շեքսպիրի «Վենետիկի վաճառականը»)

խաղացել է տարիներ շարունակ՝ խորացնելով իր մեկնաբանությունը, դարձել դրանց լավագույն կատարողը հայ բեմում: Մ-ի դերասանական խառնվածքին բնորոշ դերերից են՝ Ֆրանց Մոորը (Շիլլերի «Ավազակներ», 1905), Շայլոկը (Շեքսպիրի «Վենետիկի վաճառականը», 1908), Կույր վանականը (Շանթի «Հին աստվածներ», 1913), Սուլեյմանը (Ա. Ցուժին-Սումբատովի «Դավաճանություն», 1915) են: Խարակտերային դերասանի ցայտուն տրվյալներով (շեշտված դիմագծեր, փոքր-ինչ խանձված ձայն, կտրուկ շարժումն) Մ. այդ դերերին տվել է հոգեբանական հաբազատ, սուր և տպավորիչ մեկնաբանություն: «Աբելյան-Արմենյան» թատերախմբի կազմում հյուրախաղերով հանդես է եկել Կ. Պոլսում (1909), ուր և արժանացել է բարձր գնահատության:

Դժգոհություն, բողոք, մորմոք, հոգու ցավ, իդեալի և իրականության ցավագին բախումներ. այս բովանդակությունն է ունեցել Մ-ի ոչ միայն բեմական, այլև գրական ստեղծագործությունը՝ և՛ «Էսքիզներ» արձակ գրվածքների ժողովածուն (Թիֆլիս, 1904), և՛ փոքրածավալ պիեսները, որոնք բեմադրվել են հայ թատրոնում՝ «Շեղվածներ», «Գանգե», «Ուշ է» (1907), «Դեպի փայլող լույսը» (1909), «Ոստայն» (1912), «Հերիաք» (1914), «Հրաբուխ» (1915), «Դևերի քրքիջը» (1917), «Կեցցե կյանքը» (1919):

Անդրկովկասում սովետական կարգերի հաստատումից հետո Մ. աշխատել է Թիֆլիսի Շահումյանի անվ. թատրոնում, 1922-ից մինչև կյանքի վերջը՝ Երևանի Սունդուկյանի անվ. թատրոնում: Այստեղ Մ-ի խաղացած աչքի ընկնող դերերից են՝ Նիկելման (Հաուպտմանի «Ջրասույզ զանգ», 1922), դոկտոր Ռանկ (Իբսենի «Նորա», 1922), Պոլոնիուս, Ցագո (Շեքսպիրի «Համլետ», 1924, «Օթելլո», 1934), Ցուսով (Ա. Օստրովսկու «Եկամտաբեր պաշտոն», 1929), Կոստիլյով (Գորկու «Հատակում», 1932), Նեստ ոստիկան (Մուրացանի «Գևորգ Մարզպետունի», 1941): 1926-ից նկարահանվել է կինոյում: Հրապարակել է արձակ գրվածքներ: 1950-ին լույս է տեսել Մ-ի «Թերթիկներ իմ կյանքից» հուշերի գիրքը (անավարտ): Մ-ի «Եղասն մոքիրը» պատմվածքի հիման վրա «Հայֆիլմ»-ը նկարահանել է «Ղուլը» կինոնկարը: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

*Երկ.* Երկ., Ե., 1959:

*Գրկ.* Սարգսյան Ս., Միքայել Մանվելյան, Ե., 1955: *Լ. Հախվերդյան*

**ՄԱՆՎԵԼՅԱՆ** Ռաֆայել Լևոնի [3.6.1896, Ելիզավետպոլ (այժմ՝ Կիրովաբադ)—30.4.1978, Երևան], հայ սովետական բժիշկ, ինֆեկցիոնիստ: Բժշկ. գիտ. դ-ր (1961), պրոֆեսոր (1962): ՀՍՍՀ վաստ. բժիշկ (1943): ՍՄԿԿ անդամ 1942-ից: Ավարտել է Դոնի Ռոստովի Վարշավյան համալսարանի բնագիտության (1919) և Բաքվի համալսարանի բժշկ. (1923) ֆակուլտետները: 1926—33-ին աշխատել է Երևանի բժշկ. ինստ-ի ներքին հիվանդությունների պրոպեդևտիկայի ամբիոնում, 1937—73-ին՝ վարակիչ հիվանդությունների ամբիոնի վարիչ: Գիտական աշխատանքները հիմնականում վերաբերում են աղիքային վարակի կլինիկա-համաճարակաբանական ուսումնասիրություններին: Մ. ՀՍՍՀ-ում ինֆեկցիոն ծառայության հիմնադիրն է, եղել է առողջապահության մինիստրության ինֆեկցիոնիստը, ՀՍՍՀ ինֆեկցիոնիստների ընկերության պատվավոր նախագահ (1973-ից): Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

*Երկ.* Клинико-эпидемиологическая характеристика дизентерийных заболевании, Е., 1960.

**ՄԱՆՏԵՆՅԱ** (Mantegna) Անդրեա (1431—1506), Վաղ Վերածննդի իտալացի նկարիչ, Պադուայի դպրոցի ներկայացուցիչ: Սովորել է հոգեհոր՝ Ֆ. Սկվարչոնեի մոտ: Կրել է *Դոնատելլոյի*, Անդրեա դել *Կաստանյոյի* և վենետիկյան գեղանկարչության ազդեցությունը: Կրոնական կոմպոզիցիաներում Մ. ներդրել է մարդկային անհատականության ուժն ու արժանապատվությունը հավաստող պաթոսով ներթափանցված հերոսական աշխարհազգացողությունը: Պադուայի Էրեմիտանի եկեղեցու Օվետարի կապելլայի որմնանկարներում (1449—55) արդեն նկատելի են


Անդրեա Մանտենյա

Մ-ի խիստ, արխիտեկտոնիկ կոմպոզիցիան, հատու կրճատումները: Այս և հետագա աշխատանքներում (Վերոնայի Սան-Ձենո Մաջորե եկեղեցու եռապատկերը, 1457—59) կազմավորվել է թանկագին արծնի նման մետաղական փայլով շողշողացող գույների՝ Մ-ին բնորոշ գեղանկարչական եղանակը: 1460-ից Մ. ապրել է Մանտուայում, Լոդովիկո Գոնզագայի պալատում: Սան-Ջորջո դղյակի «Դեյլի Սպոզիի սրահ»-ի որմնանկարներում (1474) Մ. իրականացրել է ճարտ-յան և գեղանկարչության համադրումը՝ ձգտելով ինտերիերի տեսողական-տարածական ամբողջականության: Հռոմ. անտիկ արվեստի խստաշունչ ոգով է տոգորված «Կեսարի հաղթարշավի» համար արված միագույն էսքիզաշարը (1485—88, 1490—1492, Հեմպտոն Կորտ, Լոնդոն): Ուշ շրջանի գործերից են՝ «Պառնաս» (1497, Լուվր, Փարիզ), «Սամսոն և Դալիլա» (1500-ական թթ., Ազգային պատկերասրահ, Լոնդոն): Մ-ի գրաֆիկական աշխատանքները (7 փորագրություն պղնձի վրա՝ «Ծովային աստվածությունների մարտը», մոտ 1470) աչքի են ընկնում կերպարների մոնումենտալությամբ, ձևերի պլաստիկությամբ և նրբագեղությամբ:

Պատկերազարդումը տես 248-րդ էջից հետո՝ ներդիրում:

*Գրկ.* Знаменовская Т. П., Андреа Мантенья, Л., 1961; Лазарев В. Н., Мантенья, в его кн.: Старые итальянские мастера, М., 1972, с. 201—270.

**ՄԱՆՏԵՆՑ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Խիզանի գավառում: 1909-ին ուներ 22 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ:

**ՄԱՆՏԻՍ** (< լատ. mantissa — հավելում, ավելացած մաս), տասական *լոգարիթմի* կոտորակային մասը:

**ՄԱՆՐ ԲՈՒՐԺՈՒԱԶԻԱ**, մանր սեփականատերերի դասակարգ, որ զբաղվում է մանր արտադրությամբ կամ մանր առևտրով, կիրառում է անձնական կամ իր ընտանիքի, հազվադեպ՝ վարձու աշխատանք, ապրում սեփական տնտեսության եկամուտներով: Գյուղում Մ. բ-ին է վերաբերում մանր ու միջակ գյուղացիների ու ֆերմերների մեծամասնությունը (տես *Գյուղացիություն*), իսկ քաղաքում՝ արհեստավորները, մանր առևտրականներն ու մանր ձեռնարկատերերը:

Մ. բ. առաջացել ու զարգացել է *ապրանքային արտադրության* առաջացման ու ընդլայնման հետ: *Ֆեոդալիզմի* քայքայման և ապրանքափողային հարաբերությունների ընդլայնման ընթացքում նրա շարքերը խտացել են: Կապիտալիզմի զարգացման հետ այն շարունակել է մնալ բնակչության գերակշռող մասը, բայց նրա դերը տնտ. կյանքում նվազել է: Բուրժ. հասարակարգում Մ. բ. միջանկյալ տեղ է գրավում *պրոլետարիատի* և *բուրժուազիայի* միջև: Նրա վերին շերտերն իրենց դրությամբ մոտ են բուրժուազիային, ստորինները ապրում են երբեմն նյութական առավել վատ պայմաններում, քան խոշոր ձեռնարկությունների շատ բանվորներ: Սակայն որքան էլ վատ լինի Մ. բ-ի նյութական դրությունը, նա բանվորից տարբերվում է նրանով, որ արտադրամիջոցների մանր սեփականատեր է: Այդ սեփականությունը կարող է աննշան լինել, բայց այն կազմում է արտադրության հիմքը և Մ. բ-ի գոյապահպանման գլխավոր աղբյուրը: Բացի այդ, նա հանդես է գալիս ոչ թե իր աշխատուժի, այլ սեփական ձեռնարկության ապրանքների ու ծառայությունների վաճառող: Այդ վիճակը հնարավորություն է տալիս նպաստավոր պայմանների դեպքում ստանալու ոչ միայն իր աշխատուժի շուկայական համարժեքը, այլև յուրացնելու որոշ հավելյալ արժեք: Մ. բ. և՛ աշխատավոր է, և՛, միաժամանակ, մասնավոր սեփականատեր: Որպես աշխատավոր նա համակրում է պրոլետարիատին, կապիտալիզմի դեմ մղվող պայքարում դաշնակցում նրան, իսկ որպես մասնավոր սեփականատեր՝ ձգտում է անցնել խոշոր բուրժուազիայի շարքը: Մ. բ-ի այդպիսի երկակի բնույթը որոշում է դասակարգային պայքարում նրա դիրքերի անկայունությունը, քաղ. ինքնուրույն գիծ ունենալու անկարողությունը: Մանր սեփականատիրոջ տնտ. անկայունությունը ծնում է մանրբուրժուական հոգեբանությունն ու գաղափարախոսությունը (տես *Մանրբուրժուական քաղաքատնտեսություն*): Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում մանրբուրժուական երանգ ունեն հակամարքսիստական շատ տեսություններ ու կոնցեպցիաներ՝ աջ ծայրահեղականությունից մինչև ձախ ծայրահեղականությունը: Մանրբուրժուական գաղափարախոսության դրսևորում է նաև *մաոիզմը*: Մ. բ. պահպանողական է և հակված է դեպի նացիոնալիզմը, կառչում է հին բարքերին ու սովորույթներին: Նա միաժամանակ կարող է արմատական հեղափոխական դառնալ, միաձուլվել սոցիալական սուր պայքարի մեջ, բայց հեղափոխական պայքարում միշտ ունի իր ուրույն ձգտումները, թույլ կողմերն ու սխալները:

Բուրժ. վաղ հեղափոխությունների շրջանում, երբ պրոլետարիատը, որպես քաղ. ինքնուրույն ուժ, դեռևս չէր ձևավորվել, Մ. բ. ֆեոդալիզմի դեմ մղվող պայքարում խոշոր բուրժուազիայի ռեզերվն էր: Իմպերիալիզմի փուլում բուրժուադեմոկրատական հեղափոխությունների հեգեմոնը դառնում է պրոլետարիատը, իսկ գյուղացիությունը՝ շարժիչ ուժերից մեկը: Սոցիալիստական հեղափոխությունների շրջանում գյուղացիությունը դառնում է պրոլետարիատի դաշնակիցը: Մ. բ. իր գոյությունը շարունակում է նաև կապիտալիզմից սոցիալիզմին անցման շրջանում: Վ. Ի. Լենինը սոցիալիստական շինարարության դժվարին ու բարդ խնդիրներից մեկը համարում էր մանր արտադրողների նկատմամբ ճիշտ քաղաքականության վարումը: Սոցիալիստական պետությունը մանր արտադրողներին տնտեսապես օգնում է, խրախուսում նրանց տնտեսությունների կոոպերացումը: Այդպիսով պայմաններ են ստեղծվում մանր տնտեսությունների սոցիալիստական վերակառուցման համար:

Հ ա յ ա ս տ ա ն ու մ Մ. բ. կազմավորվել է վաղ ժամանակներից: Նրա դերը հասարակական կյանքում մեծացել է կապիտալիզմի զարգացման ընթացքում, իսկ XIX դ. վերջերին — XX դ. սկզբին Մ. բ. դարձել է Արևելյան Հայաստանի ամենաբազմամարդ դասակարգը: Այն ներառում էր միջակ ու մանր գյուղացիությանը, արհեստավորներին, մանր առևտրականներին և մտավորականության ստորին խավերին: 1897-ի մարդահամարի տվյալներով, Երևանի նահանգի բնակչության ընդհանուր թվաքանակի մեջ գյուղատնտ. բնակչության տեսակարար կշիռը կազմում էր 87,4, իսկ առևտրաարդյունաբերական բնակչությունը՝ 8%: 1914-ին Արևելյան Հայաստանի գյուղատնտ. բնակչության 48%-ը կազմում էին մանր տնտեսատերերը, արհեստավորների թվաքանակը փոքր էր և հիմնականում կենտրոնացված էին Ալեքսանդրապոլում ու Երևանում: Անդրկովկասում հայ արհեստավորների ու մանր առևտրականների նշանակալի մասը գտնվում էր Թիֆլիսում և Բաքվում: 1897-ի մարդահամարի տվյալներով, Թիֆլիսի ինքնուրույն զբաղմունք ունեցող բնակչությունից 9725-ը առևտրականներ էին, որոնցից 4727-ը՝ հայ: Հայ Մ. բ-ին կեղեքում էին ոչ միայն սեփական կապիտալիստները ու խոշոր հողատերերը, այլև օտար տիրապետողները: Սոցիալ-տնտ. այդպիսի պայմանները դարձել էին նրան ազգային ազատագրական շարժման մեջ ներգրավվելու դրդապատճառ: Սակայն հայ Մ. բ-ին հատուկ էր նաև հետադիմական պահպանողականությունը, նեղ ազգամոլությունն ու ահաբեկչական գործելակերպը: Գաղափարախոսության բնագավառում այն հեղափոխական դեմոկրատիզմից էվոլյուցիա է կատարել դեպի ապադասակարգային մտայնությունն ու մոլի նացիոնալիզմը:

Հայ Մ. բ-ի առաջադեմ խավերը ընդգրկվել են համառուսական հեղափոխական շարժման մեջ և ակտիվ մասնակցել ցարիզմի տապալման ու Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար մղվող պայքարին: *Մ. Աղոնց*

**ՄԱՆՐ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, տես *Սեփականություն*:

**ՄԱՆՐԱԲԱԶԵ** (Falco vespertinus), *բազեների* ընտանիքի թռչուն: Մարմնի երկարությունը 29—33 *սմ* է, թևերի բացվածքը՝ 70—77 *սմ*: Էգերը մեծ են արուներից: Արուները կապտագորշ են, գլուխն ու պոչը՝ սև, փորը, ոտքերը՝ շիկակարմիր: Էգերը մոխրագույն են, մուգ լայնակի շերտերով, ոտքերը՝ նարնջագույն: Մ. տարածված է տափաստաններում և անտառատափաստաններում, Արևելյան Եվրոպայից մինչև Պրիմորիե: Չվող թռչուն է, ձմեռում է Աֆրիկայում և Հարավային Ասիայում: Սովորաբար զբաղեցնում է ուրիշ թռչունների բները: Դնում է 3—4 խայտաբղետ ձու: Սնվում է միջատներով, մանր կրծողներով, որոնց ոչնչացնելով մեծ օգուտ է տալիս: Քանակը խիստ նվազելու պատճառով պահպանության տակ է առնված:

**ՄԱՆՐԱԲԼՈՒՐՆԵՐ**, արմատական ապարներից կազմված, տարբեր ձև ունեցող, անկանոն տարածված բլուրներ և բլուրների խմբեր (50—100 *մ* հարաբերական բարձրությամբ), որոնք միմյանցից բաժանվում են գոգավորություններով (երբեմն զբաղված լճերով) կամ հովիտներով: Մ. առաջանում են լեռնային երկրներում (ապարների լիթոլոգիական կազմի խայտաբղետության դեպքում) ցամաքային կլիմայի պայմաններում՝ երկարատև դենուդացիայի հետևանքով: Մ-ի բնորոշ օրինակ են Ղազախական մանրաբլուրները:

**ՄԱՆՐԱԴԻՏԱԿ**, համաստեղություն երկնքի հարավային կիսագնդում: Գտնվում է Այծեղջյուր, Աղեղնավոր, Հնդիկ, Կռունկ, Հարավային Ձուկ համաստեղությունների միջև: ՀՍՍՀ տարածքից երևում է մասամբ՝ ամռանն ու աշնան սկզբներին:

**ՄԱՆՐԱԴԻՏԱԿ**, մ ի կ ր ո ս կ ո պ (< *միկրո...* և հուն. σκοπέω — դիտել), անզեն աչքով անտեսանելի մանր առարկաների և դրանց առանձին մասերի խոշորացված պատկերն ստանալու օպտիկական սարք (տես նաև *Խոշորացույց*): Սովորական պայմաններում առողջ աչքը, որը բնական օպտիկական համակարգ է, լավագույն տեսողության հեռավորության վրա ($D=250$ *մմ*) երկու փոքր առարկաներ կամ առարկայի առանձին՝ մոտ դասավորված մասեր կարող է տարբերել, երբ դրանց հեռավորությունը 0,08 *մմ*-ից փոքր չէ: Ժամանակակից Մ-ով կարելի է տարբերել այնպիսի մանրամասնություններ, որոնց հեռավորությունը $\lambda/2$ կարգի է ($\lambda$-ն օգտագործվող լույսի ալիքի երկարությունն է): Երկու ոսպնյակից կազմված համակարգի խոշորացնող հատկությունը դեռևս XVI դ. հայտնի է եղել հոլանդացի և իտալացի ակնոցագործ վարպետներին: Մ-ի լայն կիրառությունն ու կատարելագործումն սկսվել է XVII դ. սկզբին: Գիտական նպատակներով Մ-ի օգտագործման մեծ հաջողությունները կապված են Ռ. Հուկի և, հատկապես, Ա. *Լևենհուկի*

անունների հետ: Մ-ի կառուցվածքի կատարելագործման, միկրոսկոպիայի տեսության, սկզբունքների ու մեթոդների մշակման գործում Լ. Էյլերի, Է. Աբբեի, Ռ. Զիգմոնդիի, Ֆ. Ցեռնիկեի և այլոց հետ մեկտեղ զգալի ավանդ ունեն նաև սովետական գիտնականները (Լ. Ի. Մանդելշտամ, Դ. Ս. Ռոժդեստվենսկի, Ա. Ա. Լեբեդև, Վ. Պ. Լիննիկ և ուրիշներ):

Մ. կազմված է 3 հիմնական մասերից. առարկան արտապատկերող օպտիկական համակարգից (*օբյեկտիվ* և *օկուլյար*), առարկան լուսավորող օպտիկական մասից և մեխանիկական մասից, որն ապահովում է առարկայի և օպտիկական համակարգի ճշգրիտ տեղաշարժը միմյանց նկատմամբ: Հետազոտվող AB փոքրիկ առարկան (նկ. 1) տեղավորվում է օբյեկտիվի գլխավոր կիզակետի ($F_1$) մոտ և լուսավորվում: Օբյեկտիվը տալիս է առարկայի իրական, շրջված և խոշորացված

Նկ. 1. մանրադիտակում ճառագայթների ընթացքի սխեմատիկ պատկերումը

$A_1B_1$ պատկերը: Օկուլյարի միջոցով լրացուցիչ խոշորացվելուց հետո ստացվում է առարկայի $A_2B_2$ կեղծ պատկերը, որը և դիտվում է աչքի լավագույն տեսողության հեռավորության վրա: Մ-ի ընդհանուր խոշորացումը՝ $N = N_{օբ} \cdot N_{օկ}$, որտեղ $N_{օբ}$-ը և $N_{օկ}$-ը օբյեկտիվի և օկուլյարի խոշորացումներն են և որոշվում են $N_{օբ} = \frac{\Delta}{F_1}$ և $N_{օկ} = \frac{D}{F_2}$ բանաձևերով ($F_1$-ը և $F_2$-ը օբյեկտիվի և օկուլյարի կիզակետային հեռավորություններն են, Δ-ն օբյեկտիվի գլխավոր կիզակետից մինչև $A_1$ $B_1$ պատկերը եղած հեռավորությունն է): Հետևաբար, $N = \frac{D \cdot \Delta}{F_1 \cdot F_2}$. թվում է, թե համապատասխանորեն ընտրելով Δ, $F_1$ և $F_2$ մեծությունները, կարելի է ստանալ ցանկացած մեծության խոշորացում: Սակայն իրականում Մ-ի խոշորացումը սահմանափակվում է լույսի ալիքային բնույթով պայմանավորված դիֆրակցիոն երևույթներով: Մ-ով դիտվող երկու ինքնալուսարձակ (ոչ կոհերենտ) կետերի միջև ամենափոքր լուծվող հեռավորությունը որոշվում է $\sigma = 0{,}51\ \lambda/A$ առնչությամբ, որտեղ $A = n\sin u$ և կոչվում է օբյեկտիվի թվային ապերտուրա (n-ը օբյեկտիվն առարկայից


Նկ. 2. չափիչ մանրադիտակ


Նկ. 3. կենսաբանական մանրադիտակ


Նկ. 4. բևեռացված լույսի մանրադիտակ


Նկ. 5. ստերեոսկոպային մանրադիտակ

բաժանող միջավայրի բեկման ցուցիչն է, u-ն՝ ապերտուրայի անկյունը): Ոչ լուսարձակ (լուսավորվող) օբյեկտների դեպքում Մ-ի լուծունակության համար Է. Աբբեն ստացել է $\sigma = \frac{\lambda}{A + \bar{A}}$ արտահայտությունը, որտեղ $\bar{A}$-ն Մ-ի լուսավորող համակարգի թվային ապերտուրան է: Մ-ի լուծունակությունը կարելի է բարձրացնել կարճ ալիքների կիրառումով և թվային ապերտուրայի մեծացումով: Վերջին եղանակն իրականացվում է իմերսիոն համակարգերում, որտեղ առարկայի և օբյեկտիվի միջև եղած տարածությունը լցնում են $n > 1$ բեկման ցուցիչ ունեցող նյութով: Առարկայի մանրամասներն ու կառուցվածքը Մ-ով կարելի է տեսնել միայն այն դեպքում, եթե դրա առանձին մասերը միմյանցից տարբերվում են լույսի կլանման (անդրադարձման) ընդունակությամբ կամ բեկման ցուցիչով: Ուստի, ելնելով ուսումնասիրվող օբյեկտի բնույթից ու հատկություններից, կիրառվում են դիտման բազմազան մեթոդներ՝ լուսավոր դաշտի, մթնեցրած դաշտի, փուլային ցայտունության, ինտերֆերենցիոն, բևեռացված լույսի, լյումինեսցենտային, ուլտրամանուշակագույն ճառագայթների ևն: Հետազոտման մեթոդից ու կիրառության ոլորտից կախված՝ գոյություն ունեն Մ-ի բազմաթիվ տեսակներ՝ չափիչ (նկ. 2), կենսաբանական (նկ. 3), բևեռացված լույսի (նկ. 4), լյումինեսցենտային, ինֆրակարմիր ճառագայթների, ստերեոսկոպային (նկ. 5), պրոյեկցիոն, ռենտգենյան, հեռուստատեսային, բարձրջերմաստիճանային ևն: Գերփոքր չափերի օբյեկտներ ուսումնասիրելիս օգտագործում են էլեկտրոնային Մ. (տես *Մանրադիտակ էլեկտրոնային*):

*Գրկ.* Михель К., Основы теории микроскопа, пер. с нем., М., 1955; Федин Л. А., Микроскопы, принадлежности к ним и лупы, М., 1961; Микроскопы, под ред. Н. И. Полякова, М., 1969. *Ժ. Նիկոյան*

**ՄԱՆՐԱԴԻՏԱԿ ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ**, առարկայի մի քանի հարյուրից մինչև մի քանի հարյուր հազար անգամ խոշորացված պատկեր ստանալու էլեկտրոնաօպտիկական սարք: Էլեկտրոնային մանրադիտակում ճառագայթման աղբյուրը արագ էլեկտրոնների հոսքն է, որն առաջանում է շիկացած կաթոդից դուրս թռչող էլեկտրոնները մի քանի հզ. *վ* պոտենցիալների տարբերություն ունեցող էլեկտրական դաշտում արագացնելիս: Ժամանակակից էլեկտրոնային մանրադիտակի լուծունակությունը, որը Å-ի ($10^{-8}$ *սմ*) կարգի մեծություն է, մի քանի հզ. անգամ գերազանցում է լավագույն օպտիկական *մանրադիտակի* լուծունակությունը: Մանրադիտակի օպտիկական համակարգը բաղկացած է տարբեր տեսակի էլեկտրոնային ոսպնյակներից (տես *Ոսպնյակ էլեկտրոնային*): Պատկերի ստացման եղանակից կախված՝ էլեկտրոնային մանրադիտակները լինում են. թափանցունակ (տրանսմիսիոն), ռաստրային, էմիսիոն, անդրադարձնող, հայելային և ստվերային: Թափանցունակ մանրադիտակում (նկ. 1) պատկեր ստացվում է այն դեպքում, երբ առարկայի միջով էլեկտրոնների փունջ է անցնում:


Նկ. 1. թափանցունակ էլեկտրոնային մանրադիտակի արտաքին տեսքը

Կազմված է լուսավորման համակարգից, առարկայախցիկից, կիզակետող համակարգից, պատկերի գրանցման սարքից (ֆոտոխցիկ): Էլեկտրոնների փնջի ամբողջ ճանապարհին օդի նոսրացումը կազմում է $10^{-4}$—$10^{-5}$ *մմ սնդ. ս.*: Լուսավորման համակարգը բաղկացած է էլեկտրոնային թնդանոթից և կոնդենսորային ոսպնյակներից (նկ. 2): Այստեղ ստացվում է



Նկ. 2. թափանցունակ էլեկտրոնային մանրադիտակի սխեման. *1.* էլեկտրոնային թնդանոթ (*Կ*—կաթոդ, *ԿԷ*—կիզակետող էլեկտրոդ, *Ա*—անոդ), *2.* կոնդենսորային ոսպնյակ, *3.* առարկա, *4.* օբյեկտիվի ոսպնյակ, *5.* ապերտուրային դիաֆրագմա, *6.* պատկերի հարթություն, *7.* դիաֆրագմա, *8.* պրոյեկտող ոսպնյակ, *9.* ֆլուորեսցենցող էկրան, որի վրա ստացվում է վերջնական պատկերը

անհրաժեշտ ինտենսիվության էլեկտրոնային փունջ, որը կիզակետվելով ուղղվում է առարկայի վրա: Առաջին, մոտ 100 անգամ խոշորացված պատկերն ստացվում է առարկայական ոսպնյակի պատկերների հարթության վրա: Այնուհետև այդ




Նկ. 3. ռաստրային էլեկտրոնային մանրադիտակի գործողության սկզբունքը

պատկերը խոշորացվում է միջանկյալ և պրոյեկտող ոսպնյակներով: Վերջնական պատկերն ստացվում է լյումինաֆորով պատած էկրանի վրա: Թափանցունակ մանրադիտակով (լուծունակությունը 8—50 Å է) կարելի է ուսումնասիրել դիսպերս համակարգերը (փոշի, սուսպենզիա) կամ այնպիսի առարկաներ, որոնց միջով անցնելիս էլեկտրոնները միայն մասնակիորեն են կլանվում (100 *կվ* պոտենցիալների տարբերության դեպքում հնարավոր է ուսումնասիրել մինչև 1500—2000 Å հաստության առարկաներ): Բյուրեղային բարակ նմուշների դիֆրակցիոն բնույթի պատկերներով հետազոտում են դիսլոկացիաներն ու բյուրեղային ցանցի այլ խախտումները: Մանրադիտակի աշխատանքային ռեժիմի համապատասխան փոփոխության դեպքում հնարավոր է ուսումնասիրել բարակ *մագնիսական թաղանթների* (տես այդ հոդվածի նկ.) կառուցվածքը (լորենցյան մանրազննություն), հաստ առարկաների մակերևութային ռելիեֆը՝ հետազոտելով այդ մակերևույթներից ըստացված բարակ դրոշմները: Թափանցունակ մանրադիտակից բացի լայն կիրառություն ունեն նաև այն էլեկտրոնային




Նկ. 4. անդրադարձնող մանրադիտակի սխեման. $\theta_1$—ճառագայթման անկյուն, $\theta_2$—դիտման անկյուն, $\alpha_0$—ապերտուրային անկյուն

մանրադիտակները, որոնցով կարելի է անմիջականորեն հետազոտել հաստ առարկաների կառուցվածքը: Այդպիսին է ռաստրային Մ. է. (նկ. 3), որի մեջ նմուշը կետ առ կետ ճառագայթվում է որոշակի ձևով շարժվող էլեկտրոնային զոնդով: Զոնդի հետ հպման յուրաքանչյուր կետում առաջանում է մի քանի տեսակի ճառագայթում, որի շնորհիվ էլ էլեկտրոնաճառագայթային խողովակի էկրանի վրա ստացվում է առարկայի խոշորացված պատկերը: Ներկայիս լավագույն ռաստրային մանրադիտակի լուծունակությունը մի քանի տասնյակ Å է: Զանգվածեղ, էլեկտրոնների համար անթափանց օբյեկտներ ուսումնասիրելիս սովորաբար կիրառում են էմիսիոն Մ. է.: Այդպիսի մանրադիտակում (լուծունակությունը՝ 200—300 Å) պատկերն ստացվում է այն էլեկտրոնների միջոցով, որոնք առաքվում են նմուշը տաքացնելիս, լուսավորելիս, էլեկտրոններով կամ իոններով ռմբակոծելիս: Անդրադարձնող մանրադիտակում (լուծունակությունը՝ 300—500 Å) առարկայի պատկերի առաջացումը պայմանավորված է ցրըված էլեկտրոններով, որոնք անցնում են պատկերը խոշորացնող ոսպնյակների համակարգով (նկ. 4): Հայելային մանրադիտակով (նկ. 5) ստանում են էլեկտրական պոտենցիալի բաշխումը հետազոտվող նմուշի մակերևույթին: Էլեկտրոններն անդրադառնում են ոչ թե անմիջապես առարկայից, այլ այն էկրանացնող համապոտենցիալ մակերևույթից: Այսպիսի մանրադիտակի լուծունակությունը 1000Å է: Ստվերային մանրադիտակում (լուծունակությունը՝ մինչև մի




Նկ. 5. հայելային էլեկտրոնային մանրադիտակի գործողության սկզբունքը և նրա օպտիկական նմանակը

քանի հարյուր Å) նմուշի վրա ուղղվում է բարակ էլեկտրոնային զոնդ, որը առարկայից հեռու տեղադրված էկրանի վրա տալիս է նրա ստվերապատկերը:

Մ. է. հզոր զենք է նյութերի կառուցվածքըն ուսումնասիրելու համար: 60-ական թթ. վերջին մանրադիտակի միջոցով ըստացվել են խոշոր մոլեկուլների լուսանկարներ, որոնցում երևում է որոշ ատոմների միջուկների դասավորությունը: Մ. է. գործնական արդյունավետ կիրառություն ունի նաև քիմ., կենսբ. և բժշկական հետազոտությունների բնագավառում:

*Գրկ.* Хокс П., Электронная оптика и электронная микроскопия, пер. с англ., М., 1974; Климовидский Л. М., Пилянкевич А. Н., Электронные микроскопы, Киев, 1976.
*Յա. Պողոսյան*

**ՄԱՆՐԱԴԻՏԱԿ ՉԱՓԻՉ**, գործիքային մանրադիտակ, չափիչ սարք, որի դիտողը *մանրադիտակն* է: Չափիչ մանրադիտակի հաշվարկային հարմարանքը լինում է օպտիկական կամ մեխանիկական: Մ. չ. կիրառվում է բարդ դետալների (օրինակ, ատամնավոր փոխանցումների և պարուրակային միացումների տարրերի, պրոֆիլային շաբլոնների, կտրող գործիքների ևն) գծային և անկյունային չափերը ուղղանկյուն և բևեռային կոորդինատներով որոշելու համար:




Չափիչ մանրադիտակ. *1.* հիմք, *2.* լուսավորիչ, *3.* բարձակ, *4.* օկուլյարային գլխիկ, *5.* դիտողային մանրադիտակ, *6.* դարձասեղան, *7, 9.* դարձասեղանի սահուղիների տեղաշարժման պտուտակներ, *8.* թափանիվ

**ՄԱՆՐԱԹԵԼԵՐ**, երկայնակի ձգված, բարակ, ճկուն և ամուր թելիկներ, որոնք պիտանի են գործվածքաթել, մանվածքաթել, թաղիք, կարելաթել, կորդաթել ևն պատրաստելու համար: Մ. մեծ մասամբ կառուցվածքային երկայնակի տարրերից բաղկացած բարձրամոլեկուլային նյութեր են, որոնք օգտագործվում են ուղղակի, ավելի հաճախ, նախորոք մանվելուց հետո: Ըստ ծագման տարբերում են բնական և քիմ. (արհեստական և սինթետիկ) Մ.: Բնական Մ. ունեն բուսական, կենդանական կամ միներալային ծագում և բաղկացած են սահմանափակ երկարության թելիկներից: Բուսական Մ. առաջանում են թելատու բույսերի սերմի (*բամբակենի*), տերևների (*ագավա*, *արմավաշուշան* ևն) վրա, պտուղներում (մետաքսաբույս) կամ ցողունում (վուշ, ջուտ, կանեփ): Ամենատարածված բուսական մանրաթելը բամբակն է, որը նուրբ, ամուր և խոնավածուծ է, օգտագործվում է կենցաղային (արտահագուստի, ներքնահագուստի, սպիտակեղենի, մանածագործական) և տեխ. կտորեղեն, կարելու թել, կորդաթել, պարան ևն պատրաստելու համար: Ցողունից, տերևից և պտուղներից ստացվող Մ. սովորաբար օգտագործում են տեխ. նպատակներով: Ցողունից ստացվող ամենանուրբ մանրաթելը վուշաթելն է, որն ամուր է, քիչ ձգվող և խոնավածուծ, օգտագործվում է պարկեր, սպիտակեղեն, զգեստ կարելու, ինչպես նաև տեխ. ևն կտորներ, ճոպաններ պատրաստելու համար:

Կենդանական Մ-ից է *բուրդը*, որը բարձրառաձգական է, խոնավածուծ և ջերմամեկուսիչ: Այն արժեքավոր Մ. է, որից մանված թելը մեծ մասամբ օգտագործվում է վերնազգեստ և տեխ. կտորներ, մանածագործական զգեստներ գործելու, թաղիք պատրաստելու համար: Կենդանական Մ. է նաև շերամորդի գեղձահյութից առաջացող բնական մետաքսաթելը, որն ստանում են շերամի *բոժոժից*: Ստացվում են մինչև 1200 *մ* երկարության և 20—30 *մկմ* հաստության Մ., որոնք օգտագործվում են ուղղակի կամ ոլորելուց հետո, հիմնականում զգեստի կտոր գործելու համար (տես նաև *Մետաքս*):

Միներալային ծագում ունեցող Մ. է ասբեստը, որից գործում են հրակայուն և այլ տեխ. կտորներ:

Արհեստական Մ. ստանում են բնական պոլիմերներից: Ամենից հաճախ օգտագործվող վիսկոզային, պղինձամոնիակային (տես *Ացետատային մետաքս*) և սպիտակուցային Մ. օրգ. պոլիմերներ են, որոնք ստացվում են փայտանյութում պարունակվող թաղանթանյութից կամ բուսական և կենդանական սպիտակուցներից (զեին, կազեին): Արհեստական Մ. կաղապարվում են համապատասխան պոլիմերի լուծույթը ֆիլիերների անցքերից ճնշման տակ դուրս մղելով: Օգտագործվում են որպես մանածագործային, կորդային և շտապելային Մ.: Վիսկոզային և պղինձամոնիակային Մ. հեշտ ճմրթվող են և թրջվելիս կորցնում են ամրությունը:

Վիսկոզային Մ-ի արտադրությունը, սակայն, անընդհատ ընդլայնվում է, քանի որ դրանք հիգիենիկ են, էժան և ստացվում են մատչելի հումքից: Արժեքավոր են նաև ապակուց ստացվող Մ., որոնք ջերմության, էլեկտրականության և ձայնի մեկուսիչներ են, կայուն են բարձր ջերմաստիճանների և քիմ. ազդակների նկատմամբ: Օգտագործվում են ապակյա կտոր գործելու, ապակեպլաստիկներ, չայրվող և ջերմակայուն իրեր, ֆիլտրող սարքեր պատրաստելու համար:

Սինթետիկ Մ. ստանում են սինթետիկ պոլիմերներից: Պոլիմերի հալույթը (պոլիամիդի, պոլիէթերի, պոլիօլեֆինի) կամ լուծույթը (պոլիակրիլանիտրիլ, պոլիվինիլքլորիդ, պոլիվինիլ սպիրտ) ֆիլիերներով մղելով: Արտադրվում են մանածագործական և կորդային թելերի, շտապելային Մ-ի և միամանրաթելի ձևով, որոնք չափազանց ամուր են, մաշվածակայուն, ջրակայուն, առաձգական և կայուն քիմ. ազդակների նկատմամբ: Հումքի բազմազանության շնորհիվ հնարավոր է ստանալ բազմապիսի հատկություններով սինթետիկ Մ., որոնց արտադրությունն ընդլայնվում է շատ արագ: Այդ Մ. ժողտնտեսության բազմաթիվ բնագավառներից աստիճանաբար դուրս են մղում բնական և արհեստական Մ-ին:

**ՄԱՆՐԱԾԱԽ ԱՌԵՎՏՈՒՐ**, տես *Առևտուր*:

**ՄԱՆՐԱԾԱԽ ԳԻՆ**, տես *Գին*:

**ՄԱՆՐԱԿԵՐՏ** ճարտարապետության և բեմանկարչության մեջ, մակետ, 1. ճարտարապետության մեջ, կառուցված կամ նախագծվող շենքի, անսամբլի, քաղաքի ծավալա-տարածական կերտվածքը (գիպսից, փայտից, պլաստմասսայից, ստվարաթղթից և այլ նյութերից): Մ-ները լինում են տարբեր մասշտաբների (առանձին դեպքերում Մ. արվում է բնական չափով): Բնօրինակը վերստեղծում են մոտավոր ձևով կամ բոլոր մանրամասնություններով (այդպիսի Մ. կոչվում է *Մոդել*): Մ. արվում է ճարտ. հորինվածքը ստուգելու և կատարելագործելու նպատակով: Մ-ները թանգարանների կարևոր ցուցանմուշներից են:

Հայ ճարտ. մեջ Մ-ները լայնորեն տարածված են եղել դեռևս վաղ միջնադարում: Դրանք ըստ բնույթի չորս տեսակ են՝ նվիրան, նշխարատուփ, նախակերպար-Մ. և ճակտոնազարդ: Նվիրան Մ-ները շենքերի ճակատների հարթաքանդակների բաղկացուցիչ մասն են, պատկերված մեկենասի, թագավորի կամ իշխանի ձեռքին (Աթենի՝ VII դ., Աղթամար, Հաղպատ, Սանահին՝ X դ., Գագկաշեն՝ XI դ., Հաղարծին, Գանձասար, Դադիվանք՝ XIII դ.): Մ-նշխարատուփերը դրվել են եկեղեցիների ներսում (Հաղպատ, Սանահին): Նախակերպար — Մ-ները ծառայել են կառուցվող շենքերի ծավալային նախագծման համար (գտնված՝ Անգեղակոթում՝ VII դ., Անիում՝ XII դ., Սիսիանում՝ XIII դ.): Մ— ճակտոնազարդերը դրվել են եկեղեցիների տանիքներին, որպես կառույցի զարդարանքի տարր (Հաղպատ, Բարձրաքաշ վանք՝ X դ., Գեղարդ, Ամաղու Նորավանք, Գանձասար՝ XIII դ., Երևանի Զորավոր՝ XVII դ.), հաճախ ամենայն մանրամասնությամբ վերարտադրելով շենքի հորինվածքը և նույնիսկ հարդարանքը (Հառիճավանք՝ XIII դ.):



Երևանի Կաթողիկե եկեղեցու մանրակերտը (XIII դ.)

2. Բեմանկարչության մեջ ներկայացման որևէ գործողության կամ պատկերի տարածական, դեկորատիվ գունային լուծման վերաստեղծված բնօրինակը փոքր չափերով, երբեմն՝ գործող անձանց ֆիգուրներով: Պատրաստվում է բեմանկարչի էսքիզներով, որի հիման վրա ստեղծվում են բեմադրության դեկորների աշխատանքային գծագրերը:

*Գրկ.* Երեմյան Ա., Անգեղակոթում գըտնըված գմբեթավոր կառույցի մանրակերտը, «ԼՀԳ», 1976, № 10: Cuneo P., Les modèles en pierre de l'architecture arménienne, «Revue des études arméniennes», t. 6, 1969.

*Լ. Զորյան, Մ. Հասրաթյան*

**ՄԱՆՐԱՁԿՆԵՐ**, սաղմոնների ընտանիքի *սիգերի* սեռի ձկներ: Հայտնի է 2 տեսակ. բալթիկական կամ եվրոպական Մ. (Coregonus albula) հիմնականում տարածված են Բալթիկ ծովում և Կարելիայի լճերում: Շատ շարժունակ են, մեջքը կանաչավուն է, կողքերը և փորը՝ արծաթավուն: Սնվում են պլանկտոնով: Սիբիրական Մ. (C. sardinella), գետային ձկներ են, ապրում են Սիբիրի գետերում: Սնվում են խոշոր խեցգետնակերպերով, ուրիշ ձկների մատղաշով: 2 տեսակն էլ ունեն արդյունագործական նշանակություն:

**ՄԱՆՐԱՆԿԱՐՉՈՒԹՅՈՒՆ**, մինիատյուր (< ֆրանս. miniature, իտալ. miniatura, < լատ. minium — ծիրանի պիգմենտ, կինաբար, կարմիր ներկ, որով հնում զարդանկարում էին ձեռագիր մատյանները), ոչ տպագիր գրքի պատկերազարդում, կերպարվեստի ստեղծագործություն, որն առանձնանում է փոքր չափերով և գեղարվեստական հնարքների նրբությամբ: Մ-յան առանձնահատուկ տեսակ է նաև գեղանկարչական (երբեմն փորագիր) պատկերը (հատկապես դիմանկարային): Մ-յան մեկ այլ հատուկ տարատեսակը լաքով, յուղաներկով կամ տեմպերայով ստեղծված նկարներն են՝ լաքե ոչ մեծ առարկաների մակերեսին (տես *Լաքեր* գեղարվեստական):

Գործածությունից դուրս եկող «մինիատյուր» տերմինի փոխարեն գրական, երաժշտական, թատերական, կրկեսային, էստրադային ստեղծագործությունների վերաբերյալ, որպես «փոքր ձևերի» երկեր, կիրառվում է «մանրապատում»-ը՝ նշելով կարճ պատմվածք, պիես, վոդևիլ, պարարվեստի, էստրադային, ծաղրածուական փոքր տեսարան, երաժշտական մանրանվագ ևն: Նույնը, փոքրաչափ երկերից է կազմվում մանրապատումների թատրոնների խաղացանկը:

Մ-յան հիմնական բնագավառներից մեկը գրքի Մ. է (ծաղկումը), գրքարվեստը՝ գրչագիր մատյաններում ձեռքով կատարված գծանկարներ, գուաշով, սոսնձաներկերով, ջրաներկերով կամ այլ ներկերով գունանկարված պատկերներ, ինչպես նաև այդ գրքերի ձևավորումը՝ անվանաթերթեր, խորաններ, լուսանցազարդեր, բուսական և կենդանական մոտիվներով տեսարաններ: Գրքի Մ-յան հնագույն օրինակներ պահպանվել են Հին Եգիպտոսում (Նոր թագավորության շրջանի «Մեռյալների գրքերը»): Հին հույները պատկերազարդել են ամբողջ տեքստը (հատկապես Հոմերոսի գրվածքները): Պապիրուսագալարների նկարները միմյանց են հաջորդել կինոկադրերի նման: Քրիստոնեական համայնքների ծաղկման ժամանակաշրջանից (II դարից սկսած) մագաղաթյա մատյանները հետզհետե դուրս են մղել պապիրուսագալարները: Գրքի ձևը թելադրել է էջի պատկերազարդման սկզբունքը: Մեզ հասած հնագույն մագաղաթյա մանրանկար ձեռագիրը Հոմերոսի «Իլիական»-ն է (մոտ 500, Ամբրոզիանա գրադարան, Միլան): Հելլենիստական շրջանում Մ-յան գլխավոր կենտրոններ են եղել Ալեքսանդրիան, Հռոմը. նշանավոր էին նաև Բյուզանդիոնը, Պերգամոնը, Անտիոքը, Եփեսոսը: Բյուզանդական Մ. ժառանգել է Ալեքսանդրիայի հունա-հռոմեական դասական և ասորական արլ. ավանդույթները: Պատկերամարտության շրջանում (726—843) Մ. անկում է ապրել: IX դ. 2-րդ կեսին նկատելի է Մ-յան զարգացման երկու միտում. ա) դեպի հելլենիստական Ալեքսանդրիան կողմնորոշված արքունի ոճ, բ) ասորապաղեստինյան կամ կապադովկիական ավանդներից սնվող «վանական ոճ», որն ավելի անմիջականորեն է արձագանքել կյանքին: Առաջին ոճը առկա է «Գրիգոր Նազիանզացու քարոզներում», ուր պատկերված է նաև Վասիլ Ա և նրա ընտանիքը (880—886, Ազգային գրադարան, Փարիզ), «Եսայի մարգարեի մեկնություններում» (XI դ., Վատիկանի գրադարան, Հռոմ), «Վասիլ Բ-ի մենոլոգիայում» (Վատիկանի գրադարան, Հռոմ) ևն: Երկրորդ ոճի փայլուն օրինակն է «Խլուդովյան սաղմոսարանը» (IX դ., Պատմության թանգարան, Մոսկվա): X դ. երևան են եկել նոր ազդեցություններ՝ պարսկական և մահմեդական, որոնք արտահայտվել են սիմվոլիկ պատկերներում (խորաններում, անվանաթերթերում, բուսական և կենդանական, ինչպես նաև ճարտ. մոտիվներում): Ռիթմը և պատկերագրական մոդելները սկսել են էական դեր խաղալ: Ուշ շրջանի Մ. հաճախ սահմանափակվել է կանոնական սյուժեներով: Ասորիքում և Պաղեստինում (Եդեսիա, Մծբին, Անտիոք կենտրոններով) V դ. սկսած ասորի վանականները քրիստոնեական թեմատիկայի պատկերման տարբերակներում նոր միջոցների են դիմել, որ իր կնիքն է դրել բյուզանդական և հայկական, ղպտիական, արաբական, ինչպես և արևմտաեվրոպական Մ-յան

վրա: Արևելյան Մ. հելլենիստական արվեստից վերցրել է ուրվագիծը՝ առավել ուժեղացնելով զգայականը: VI դ. ասորական նշանավոր ձեռագրերն են Վիեննայի «Ծննդոցը» (Ազգային գրադարան, Վիեննա), «Ռոսանոյի ծիրանի Ավետարանը», «Ռաբուլայի Ավետարանը» (Լաուրենցիանա գրադարան, Ֆլորենցիա) ևն: Արևմուտքի Մ. օգտվել է ինչպես արլ., այնպես էլ բյուզանդական ձևերից: VII—VIII դդ. իռլանդա-սաքսոնական Մ. միահյուսել է կելտական, միջերկրածովյան և արլ. ամենատարբեր մոտիվներ՝ վերարտադրելով կենդանակերպ, առավել հազվադեպ՝ մարդկային ֆիգուրներ: Պատկերազարդման բնորոշ գիծը ոլորուն մոտիվների խճճված համակարգն է՝ էջը բռնող զարդարուն գլխատառով: X դարից իռլանդա-սաքսոնական ոճը տարածվել է Եվրոպայում: Մինչև այդ մայր ցամաքում VIII դ. կեսերից սկսվել էր «Կարոլինգյան վերածնունդը» (տես *Կարոլինգյան արվեստ*): Ակներև էր վերադարձը դեպի դասական ակունքները, բայց դրա հետ մեկտեղ դեկորատիվ հարդարանքում զարգացվել են մերովինգյան (տես *Մերովինգյան արվեստ*) և իռլանդա-սաքսոնական Մ-յան սկզբունքները: Կարոլինգների թագավորության տրոհման հետ X դ. վերջում Եվրոպայի երկրների Մ-յան մեջ զարգացել են ազգային գծերը, ստեղծվել են տեղական բազմաթիվ դպրոցներ: Ռոմանական արվեստում Մ. կազմվել է բարդ ֆիգուրատիվ հորինվածքի ռիթմական կապերից: Ռոմանական արվեստի ծաղկման հետ ուժեղացել է գծա-հարթապատկերային, նախշազարդային ոճը: Ուշ ռոմանական շրջանում Մ-յան մեջ ներգրավվել են աշխարհիկ թեմաներ, շարժում, հուզականություն, պլաստիկա, տարածական և բնանկարային տարրեր (քաղաքների, խաչակրաց արշավանքների պատկերներ): XIII դ. Իտալիայում մարմնի և տարածության կերպավորման նոր միտումներ են երևան եկել, որը մասամբ նկատելի է նաև Ֆրանսիայում, ուր կիրառվել են զարդարվեստի նոր ձևեր, լուսանցքներում հաճախ պատկերվել կրկեսային զավեշտական տեսարաններ: Մեծացել է հետաքրքրությունը լանդշաֆտի և ճարտ. պատկերի նկատմամբ: Ազնվականության և հոգևորականության հետ պատվիրատուներ են դարձել բյուրգերները և համալսարանականները: Դրա շնորհիվ ընդլայնվել է աշխարհիկ գրականության պատկերազարդումը: XIII դ. վերջին Արմ. Եվրոպայում գոթական Մ. հասել է զարգացման բարձրակետին, ուժեղացել է ռեալիստական պատկերումը, հեռանկարի, բնության խորքի, ֆիգուրների իրական համամասների և նյութականության պատկերման ձգտումը՝ կանխանշելով նոր ժամանակների արվեստը: Մինչև XIV դ. վերջը և XV դ. սկիզբը Մ. զարգացել է Ֆրանսիայում և Ֆլանդրիայում: Գերմանիայում հատուկ դեր են խաղացել, այսպես կոչված, ժող. ձեռագրերը՝ ազատ, հոսուն, սրամիտ գրչանկարների շարքով: XV դ. արևմտաեվրոպական բոլոր երկրներում Մ. սկսել է կրել հաստոցային նկարչության ազդեցությունը (օրինակ, Լիմբուրգ և Վան Էյք եղբայրների Մ.): XV դ. տպագրության գյուտի



«Համբարձում», մանրանկար 586-ին պատկերազարդված «Ռաբուլայի Ավետարան»-ից (Լաուրենցիանա գրադարան, Ֆլորենցիա)




«Մարկոս ավետարանիչ», մանրանկար 697—698-ին պատկերազարդված «Լինդիսֆերնի Ավետարան»-ից (Բրիտանական թանգարան, Լոնդոն)

հետևանքով Մ. աստիճանաբար դուրս է մղվել: XI դ. Հին Ռուսիայում Մ. հիմնականում հետևել է բյուզանդական օրինակներին («Օստրոմիրի Ավետարան», 1056—57, Սալտիկով-Շչեդրինի անվ. հանրային գրադարան, Լենինգրադ): XII—XV դդ. որմնանկարներ ու սրբապատկերներ հիշեցնող մանրանկարների կողքին («Խիտրովո Ավետարան», XIV դ. վերջ — XV դ. սկիզբ, Վ. Ի. Լենինի անվ. գրադարան, Մոսկվա), ստեղծվել են կենդանի ու անմիջական ընկալումով կատարված լուսանցազարդեր (XII—XV դդ. Նովգորոդյան ձեռագրերի հրաշապատում և հրապատում ֆիգուրներով հյուսածո գլխատառերը): XV դ. վերջում Մ-յան մեջ թափանցել են աշխարհիկ (գլխավորապես պատմական և կենցաղային) սյուժեներ (1540—60-ական թթ. Պատկերազարդ տարեգրությունների ժողովածուն ՍՍՀՄ տարբեր գրադարաններում): IX—X դդ. վրաց. Մ. կապված լինելով տեղական ավանդներին՝ աչքի է ընկնում գծայնությամբ և գույների պայծառությամբ («Մցխեթի սաղմոսարան», X դ.): Մ-յան մեջ բյուզանդամետ ուղղությունն ունեցել է բազմաշերտ նկարչական տեխնիկա՝ ոսկու կիրառումով («Գելաթի Քառավետարանը», XI դ., երկուսն էլ Վրաց. ՍՍՀ ԳԱ ձեռագրերի ինստ., Թբիլիսի): XVII դ. պատկերազարդվել են աշխարհիկ գրքեր (հատկապես Շ. Ռուսթավելու «Վագրենավորը»): Մ. էական դեր է խաղացել մահմեդական աշխարհում: Բացի Ղուրանից, որը չէր պատկերազարդվում ֆիգուրատիվ նկարներով, զարդարվել են վեպերի («Շահնամեի» տիպի), սիրավեպերի և գիտական տրակտատների էջերը: Սկզբնական շրջանում (արաբ. Մ-յան Մոսուլի և Բաղդադի դպրոցներ) նկատելի է պարսկ. և Ասորիքի հելլենիստական արվեստի ազդեցությունը: Մոնղ. նվաճումների հետ Մ. զարգացել է Հուլավյանների իշխանության տարածքում (տես *Թավրիզի մանրանկարչության դպրոց*), հարստացել չինական արվեստին բնորոշ տարրերով (բնանկարային և կենդանական-բուսական հարդարանքում): Թեմուրյանների ժամանակ (*Հերաթի մանրանկարչության դպրոց*, Շիրազի մանրանկարչության դպրոց) պարսկ. Մ. հասել է զարգացման բարձրակետին, դարձել ծայրահեղ դեկորատիվ, քնարական: Սեֆյան Իրանում (XVI—XVII դդ.) մեծացել են Մ-յան գորգային էֆեկտները: Աֆղանական, միջինասիական ու այլն. Մ-յան մեջ (ծաղկումը՝ XV դ. 1-ին կեսին) զարդարուն ճոխ մակերեսները, քնարական բնապատկերները, գծային նուրբ ռիթմը, մեղմ գունահարաբերումները կազմում են նկարի դեկորատիվ պատկերահամակարգը: XVI—XVII դդ. Իրանում և այլուր տարածվել է դիմանկար-մանրանկարը: Վաղ հնդ. շրջանի Մ-յան մեջ ոճավորված հարթ պատկերները, հստակ գեղագիր գիծը XVI—XVII դդ. փոխվել է առանձին մանրամասների ճշգրիտ արձանագրությամբ, մարդկային դիմագծերի մանրակրկիտ պատկերմամբ, միաժամանակ պահպանելով ավանդական հարթապատկերայնությունը, սիմետրիզմը և դեկորատիվությունը: Հաճախ հանդիպում են պատմահերոսական սյուժեներ («Բաբուր-Նամե», XVI դ. վերջ, Արևելքի ժողովուրդների արվեստի թանգարան, Մոսկվա): Զարգացել են դիմանկարի և անիմալիստական ժանրերը (Գուջարաթի դպրոց, Մողոլների դպրոց): Մ. (գրչանկարներ արմավատերևների վրա) հայտնի է նաև Ինդոնեզիայում և Հարավ-Արևելյան Ասիայի այլ երկրներում: Ացտեկների, մայաների, միշտեկների մշակույթում պահպանվել են պատկերագրեր հիշեցնող համարձակ, հյութեղ գույնով հագեցած նկարներ: Տես նաև *Գիրք*: **Դիմապատկերային Մ.**, ծխախոտատուփերի, ժամացույցների, մատանիների, մեդալիոնների ևն վրա կատարված, փոքր չափի (1,5-ից մինչև 20 *սմ*) գեղանկարչական (երբեմն փորագիր) դի-

«Հովհաննես ավետարանիչ», մանրանկար 862-ին պատկերազարդված «Մլքե թագուհու Ավետարան»-ից (Վենետիկի Մխիթարյանների մատենադարան, ձեռ. № 1144/86)

մապատկերի տեսակ: Այդօրինակ մանրապատկերներն ստեղծվել են գուաշով և ջրաներկերով՝ մագաղաթի, ստվարաթղթի, փղոսկրի վրա, երբեմն մետաղի վրա՝ յուղաներկով, ճենապակու վրա՝ խեցեգործական ներկերով, ինչպես և արծնի տեխնիկայով: Որպես գեղանկարչության հատուկ ժանր դիմապատկերային Մ. ձևավորվել է Վերածննդի շրջանում: Դիմապատկերային Մ. տարածված էր Իտալիայի, Ֆրանսիայի, Գերմանիայի, Անգլիայի, Ռուսաստանի և այլ երկրների XVI—XIX դդ. արվեստում: XIX դ. կեսից այն իր տեղը զիջել է դագերոտիպությանը (լուսանկարում՝ հատուկ քիմ. եղանակով նախապատրաստված մետաղի վրա) և լուսանկարչությանը:

«Եզեկիելի տեսիլքը», մանրանկար 867—886-ին պատկերազարդված Գրիգոր Նազիանզացու ճառերի ժողովածուից (Ազգային գրադարան, Փարիզ)

Հայկական Մ. աչքի է ընկնում ոճերի և դպրոցների բազմազանությամբ: Ամենից շատ պատկերազարդվել են *Ավետարանները*, ապա՝ *Աստվածաշունչները* և ծիսական-կրոնական մյուս ժողովածու-մատյանները: Մեզ հասած առաջին մանրանկարները VI—VII դդ. նմուշներ են (տես «*Էջմիածնի Ավետարան*»): Դրանցում պերսոնաժների տիպերը, գեղանկարչությունը ևն հիշեցնում են Լմբատի, Արուճի VII դ. որմնանկարները: «*Մլքե թագուհու Ավետարանը*», «*Կարսի Ավետարանը*», «*Տրապիզոնի Ավետարանը*» մեզ են հասել Բագրատունիների և Արծրունիների թագավորությունների շրջանից: Այս ձեռագրերում կան հայկական Մ-յան հետագա զարգացման հիմնական գծերը. ա. սյունազարդ խորաններ, բ. ոսկետառ անվանաթերթեր՝ գլխազարդերով և տիտղոսազարդերով, գ. տերունական նկարներ (Քրիստոսի կյանքի այն դեպքերը, որոնք նշված են եկեղեցական տոներում, դ. տեքստի հետ դրվող մանրանկարներ: Սրանցում առկա է նաև բյուզանդական և արևելաքրիստոնեական արվեստների օրգանական համադրումը («Մլքե թագուհու Ավետարան»-ի խորանների կամարադաշտերում, եգիպտական մոտիվներ, ավետարանիչների և տերունական նկարների ճարտ. դեկորում՝ հելլենիստական արվեստի տարրեր): Արևելաքրիստոնեական Մ-յանը առնչվող 1038-ի (Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարան, ձեռ. № 6201) և Փոքր Հայքի ավետարանների մեծադիր մանրանկարները, պահպանելով ոճական և պատկերագրական հնավանդ կանոններ, պարունակում են նորույթներ, որոնք դրվել են հայկական հետագա ողջ պատկերագրության հիմքում (օրինակ, մերկ Քրիստոսի պատկերումը խաչի վրա): Այդ խմբի ձեռագրերի ոճի գծազարդապատկերային զարգացումը ակնբախ է *Վասպուրականի մանրանկարչության դպրոցում*: XI դ. 2-րդ կեսի մի խումբ ձեռագրեր «*Մողնու Ավետարան*»-ի գլխավորությամբ կազմել են Անիի դպրոցը, որի ոճական ձևերում նմանություններ են նկատվում ուշկարոլինգյան և նախագոթական Մ-յան հետ, որ ցույց է տալիս վերջինների արլ. ակունքները: Այդ խմբի մանրանկարներն աչքի են ընկնում մոնումենտալ-որմնանկարային ոճով: XII դ. մեզ հասած ձեռագրերում զարգացվել են X—XI դդ. Մ-յան ավանդույթները, օժտվել ողբերգականհուզական շեշտերով, կրկին մեծ տեղ է տրվել բուսական և կենդանական մոտիվներին: XIII դ. 1-ին կեսին, մինչև մոնղ. արշավանքները, Մ. նոր ծաղկում է ապրել Մեծ Հայքում («*Հաղպատի Ավետարան*», «*Թարգմանչաց Ավետարան*»): Մ. աննախադեպ նոր որակ է ստացել *Կիլիկյան Հայաստանում* (տես նաև *Կիլիկիայի մանրանկարչության դպրոց*): Ինչպես վանքերում, այնպես էլ արքունիքում հավաքվել են ընտիր ձեռագրեր, հոգևորականներից ՝բացի ձեռագրեր են պատվիրել թագավորական տան անդամներն ու ավագանին: Թուլացել է մատյանների ծիսական-եկեղեցական նշանակությունը, դրանք հաճախ պատվիրվել են անձնական օգտագործման նպատակով՝ ավագանու նրբացած ճաշակը և կրոնական զգացումները բավարարելու համար: Փոքրացել են մատյանների չափերը, մանրանկարիչների հայացքն ավելի է ուղղվել դեպի իրականությունը և հարևան երկրների (Բյուզանդիա և եվրոպական երկրներ) մշակույթը: Հանդես են եկել նշանավոր մանրանկարիչներ *Գրիգոր Մլիճեցին*, *Թորոս Ռոսլինը*, *Սարգիս Պիծակը* և ուրիշներ, ստեղծվել են նրբաոճ արքունական ձեռագրեր («*Հեթում Բ թագավորի ճաշոց*», «*Կեռան թագուհու Ավետարան*»): Համեմատաբար կայուն քաղաքական վիճակը Մեծ Հայքի որոշ շրջաններում նպաստել է Մ-յան զարգացմանը: Եթե *Գլաձորի մանրանկարչության դպրոցի* ներկայացուցիչները (տես նաև *Մոմիկ*, *Թորոս Տարոնացի*, *Ավագ*) աչքի են ընկնում շեշտված անհատականություններով, ապա Վասպուրականի ծաղկողները (*Սիմեոն Արճիշեցի*, *Զաքարիա Աղթամարցի*, *Ռստակես*, *Կիրակոս Աղբակեցի* և ուրիշներ) հետևել են ավելի միասնական գեղանկարչական ավանդույթների: Մ-յան նշանավոր կենտրոն էր նաև *Տաթևի մանրանկարչության դպրոցը*՝ *Գրիգոր Տաթևացու* գլխավորությամբ, որից հետո հայկական Մ. շարունակվել է գաղթավայրերում՝ Ղրիմում, Նոր Ջուղայում, Կոստանդնուպոլսում և այլուր (տես նաև *Ղրիմի մանրանկարչության դպրոց*, *Նոր Ջուղայի դպրոց*): XVII—XVIII դդ. գրքի հայկական Մ. աստիճանաբար իր տեղը զիջել է գրքի պատկերազարդման տպագրական արվեստին:

Մատթեոս ավետարանիչի խորհրդանիշ հրեշտակը, մանրանկար XIV դ. վերջին — XV դ. սկզբին պատկերազարդված «Խիտրովո Ավետարան»-ից (Վ. Ի. Լենինի անվ. պետական գրադարան, Մոսկվա)

*Գրկ.* Հայկական մանրանկարչություն (Ալբոմ), Ե., 1967: Դուռնովո Լ., Հին հայկական մանրանկարչություն, Ե., 1952: Ազարյան Լ., Կիլիկյան մանրանկարչությունը XII—XIII դդ., Ե., 1964: Հայկական մանրանկարչություն, Վնտ., 1966 (Առաջաբանը՝ Ս. Տեր-Ներսեսյանի, կազմ. Մ. Ճանաշյան): Հակոբյան Հ., Հայկական մանրանկարչություն: Վասպուրական (Ալբոմ), Ե., 1978: Свирин А. Н., Миниатюра древней Армении, М.—Л., 1939; Նույնի, Древнерусская миниатюра, М., 1950; Корхмазян Э. М., Армянская миниатюра Крыма (XIV—XVII вв.), Е., 1978; Измайлова Т. А., Армянская миниатюра XI века, М., 1979; Дурново Л. А., Очерки изобразительного искусства средневековой Армении, М., 1979: Martin F. R., The Miniature Painting and Painters of Persia, India and Turkey..., v. 1—2, L., 1912; Boe-

ckler A., Abendeand. Miniaturen, B., 1930; Weitzmann K., Illustrations in Roll and Codex, Princeton, 1947; Diringer D., The Illuminated Book, its History and Production, L., 1958; Der-Nersessian S., L'art Arménien, P., 1977. *Վ. Ղազարյան*

**ՄԱՆՐԱՊԱՏՈՒՄ**, գեղարվեստական արձակի ամենափոքրածավալ ժանրը: Ունի խոհա-փիլիսոփայական լիցք, քնարական շունչ, ավարտուն բովանդակություն և կառուցվածք: Նյութը տրվում է խտացված: Հատուկ է մտքի կոնկրետությունը: Հաճախ ունենում է անսպասելի ավարտ: Աղերսվում է *անեկդոտին, արձակ բանաստեղծությանը*: Մեծ մասամբ չունի ամբողջական սյուժե, հանգամանալից բնութագրված կերպարներ: Լայն զարգացում է ապրել մեր օրերում: Մ-ներ են գրել Դ. Դեմիրճյանը, Գ. Մահարին, Լ. Հուրունցը և ուրիշներ: *Մ. Մելքոնյան*

**ՄԱՆՐԱՐՈՒՐՔ**, ոսկերչական տեխնիկա՝ նուրբ ոսկեթելը կամ արծաթաթելը զարդանախշի ձևով դասավորելն ու ամրացնելը: Մ. եղանակով պատրաստված իրերը (գոտի, սափոր, մասնատուփ, կենցաղային առարկաներ) զարդարվել են փիրուզյա և գունավոր այլ ակներով, մարգարիտներով: Հնուց հայտնի է եղել աշխարհի շատ ժողովուրդների: Հայաստանում կիրառվել է Վանում, Կարինում, Արծկեում, Մուշում, Ալեքսանդրապոլում, Երևանում և այլուր: Մեր օրերում Երևանի ոսկերիչ վարպետները շարունակում են ավանդական Մ-ի օրինակով ստեղծել նոր զարդեր ու կենցաղային առարկաներ: Տես նաև *Ցանցկեն*: *Ն. Ավագյան*



Մանրարուրք տեխնիկայով պատրաստված գոտի, արծաթ (Կարին, XIX դ., Հայաստանի պատմության պետական թանգարան, Երևան)

**ՄԱՆՐԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՔԱՂԱՔԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆ**, բուրժուական քաղաքատնտեսության ուղղություն, որն արտահայտում է *մանր բուրժուազիայի* շահերը: Ձևավորվել է XIX դ. սկզբներին, հիմնադրել են Ժ. *Սիսմոնդին* և Պ. *Պրուդոնը*: Բնույթը որոշվում է մանր բուրժուազիայի սոցիալ-տնտեսական էությամբ: Մ. ք. քննադատում է կապիտալիստական արտադրաեղանակի հավերժականության բուրժ. դոգման և նշում կապիտալիստական ինդուստրիայի հակասությունները, նրա զարգացման կործանիչ հետևանքները մանր արտադրողների համար: Սակայն Մ. ք. կապիտալիզմի հակասությունների գիտական վերլուծության փոխարեն «...սահմանափակվում է կապիտալիզմի սենտիմենտալ քննադատությամբ՝ մանր բուրժուազիայի տեսակետից...» (Լենին Վ. Ի., Երկ., հ. 2, էջ 247), իսկ «...մանր արտադրության վրա նայում էր իբրև բնական հասարակարգի վրա, ընդվզելով խոշոր կապիտալի դեմ...» (նույն տեղում, էջ 248): Վերջինը նույնացնում է առևտրական ու փոխատվական կապիտալների հետ, իսկ շահագործումը պատճառաբանում անհամարժեք փոխանակությամբ, որը խախտում է արժեքի օրենքը: Մ. ք-յան ներկայացուցիչները, գերարտադրության տնտ. ճգնաժամը համարելով կապիտալիստական արտադրաեղանակի գլխավոր արատներից մեկը, չկարողացան, սակայն, բացահայտել դրա բուն պատճառի՝ արտադրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր կապիտալիստական ձևի միջև հակասության էությունը: Բաշխման հարաբերությունների կարգավորումը պայմանավորում են պետության օգնությամբ սպառողական ու վարկային կոոպերատիվ ընկերությունների կազմակերպմամբ, որով, իբր, կբարձրանա մանր արտադրողների վարկունակությունը, կապահովվի արտադրության զարգացումը: Շրջանառության, իսկ երբեմն սպառման ու բաշխման ոլորտները Մ. ք-յան ներկայացուցիչները համարում են քաղաքատնտեսության ուսումնասիրության առարկա: Մ. ք-յան ժամանակակից տեսությունները մի կողմից քարոզում են կապիտալիստական հակասությունների ռեֆորմիստական լուծում, համաձայնություն իմպերիալիզմի հետ, հասարակության զարգացման նոր ուղու որոնում, մյուս կողմից՝ հաճախ սուր, բայց ոչ միշտ հետևողականորեն քննադատում են իմպերիալիզմի առավել անցանկալի հակասությունները, հիմնավորում դեմոկրատական իրավունքների ապահովման, մոնոպոլիաների իշխանության սահմանափակման, ազգային անկախության և զարգացման ոչ կապիտալիստական ուղու համար պայքարի անհրաժեշտությունը:

Ռուսաստանում Մ. ք-յան ներկայացուցիչները նարոդնիկներն էին (տես *Նարոդնիկություն*, *Նարոդնիկներ հայ*), որոնք կապիտալիստական արտադրահարաբերությունները քննադատում էին գյուղացիական սոցիալիզմի դիրքերից, պաշտպանում մանր արտադրողների շահերը: Հայ իրականության մեջ Մ. ք-յան դրույթներն արտահայտվել են մանրբուրժուական կուսակցությունների [*Հնչակյան կուսակցություն*, *«Սոցիալ-դեմոկրատական բանվորական հայ կազմակերպություն»*՝ (սպեցիֆիկներ)] գաղափարախոսության մեջ: Հնչակյանները (Ա. *Նազարբեկ*, Մ. *Նազարբեկ*, Գ. *Կաֆյան* և ուրիշներ) սկզբում ժխտում էին Հայաստանում կապիտալիզմի զարգացման անխուսափելիությունը, հայ համայնքը համարում սոցիալիզմի նախադրյալների կրող: Միապետական կարգերի տապալման հարցում անտեսում էին դասակարգային պայքարը, բանվոր դասակարգի պատմական դերը և իրենց քաղ. գործունեությունը կապում գյուղացիության ու մյուս մանր սեփականատերերի հետ: Հետագայում որոշ վերագնահատում է կատարվել հնչակյան կուսակցության գաղափարախոսության մեջ. կապիտալիզմն արդեն ընդունվել է որպես անհրաժեշտ և սոցիալիզմին անցնելու համար նյութական պայմաններ ստեղծող փուլ: Փորձեր են կատարվել նաև կապիտալիզմի հիմնական հակասությունը բացահայտելու ուղղությամբ, կապիտալիստական շահագործման վերացման ուղին հայտարարվել է սոցիալիստական հեղափոխությունը, սակայն նորից անտեսվել է պրոլետարիատի դիկտատուրայի ու նրա ղեկավար դերի հարցը:

Սպեցիֆիզմը մենշևիզմի ու բունդականության հայկ. տարբերակն էր: Այս ուղղության գաղափարախոսների (Դ. *Անանուն*, Բ. *Իշխանյան*) կարծիքով Հայաստանն ու հայ ժողովուրդը բացառիկ առանձնահատկություն ունեն, և հայ պրոլետարիատը պետք է գործի միջազգային բանվորական շարժումից անկախ, ստեղծի անջատ քաղ. կազմակերպություններ: Սպեցիֆիկները ժխտում էին հայ գյուղացիության շահագործման, դասակարգային շահերի հակամարտ հակասության փաստը, կալվածատերերին ու մելիքներին համարում ժողովրդի «հոգատար հայր ու փրկիչ», գյուղացիությանը՝ հետադիմական ուժերի սոցիալական հենարան: Սոցիալիստական հեղափոխությունը նույնացնում էին սահմանափակ բարենորոգումների հետ, դասակարգային հաշտություն քարոզելով, ձգտում ստեղծել «հայության հավաքական դեմք»՝ բուրժուազիայի գլխավորությամբ: Իրենց ծրագրերի բուրժուա-ազգայնական բովանդակությունը սպեցիֆիկները քողարկում էին սոցիալիստական, մարքսիստական ֆրազներով:

*Գրկ.* Մարքս Կ. և Էնգելս Ֆ., Կոմունիստական կուսակցության մանիֆեստը, Ընտ. երկ., հ. 1, Ե., 1972: Մարքս Կ., Լուի Բոնապարտի Բրյումերի տասնութը, նույն տեղում: Լենին Վ. Ի., Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ, Երկ., հ. 1: Նույնի, Մարքսիզմ և ռևիզիոնիզմ, նույն տեղում, հ. 15: Նույնի, «Ձախ» երեխայության և մանր բուրժուականության մասին, նույն տեղում, հ. 27: Կասյան Ս., Սպեցիֆիկները և սպեցիֆիզմը, Թ., 1928: Թովմասյան Ն. Ռ., Մանրբուրժուական տընտեսագիտության քննադատության ուրվագծեր, Ե., 1961: Խուրշուդյան Լ. Ա., Սփյուռքահայ կուսակցությունները ժամանակակից էտապում, Ե., 1964: Աղոնց Մ. Հ., Հայաստանի ժողովրդական տնտեսությունը և հայ տնտեսագիտական միտքը XX դարի սկզբին, Ե., 1968: Петров В., Титов Б., Мелкобуржуазная политическая экономия, (Саратов), 1958; Против буржуазных и мелкобуржуазных теорий социализма, (Сб. ст.), М., 1972. *Ն. Թովմասյան*

**«ՄԱՆՐԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱՅՈՒՆՈՒԹՅԱՆ» ՏԵՍՈՒԹՅՈՒՆ**, բուրժուական քաղաքատնտեսության ուղղություն, ըստ որի գյուղատնտեսության մեջ մանր արտադրությունը, իբր, առավելություններ ունի խոշորի նկատմամբ, ուստի ավելի կենսունակ է և կայուն: Առաջացել և տարածվել է XIX դ. 2-րդ կեսին — XX դ. 1-ին քառորդում, Արևմտյան Եվրոպայի երկրներում: Տեսության կողմնակիցները (Կ. Կլավկի, Է. Դավիդ, Մ. Ի. *Տուգան-Բարանովսկի*, Ն. Ա. Կաբլուկով, Վ. Մ. Չեռնով, Պ. Պ. Մասլով և ուրիշներ) ձգտում էին ժխտել գյուղատնտեսության մեջ կապիտալի ու արտադրության կենտրոնացման ու համակենտրոնացման Մարքսի հայտնագործած տնտ. օրենքների գործողությունը, պատճառաբանելով, որ գյուղատնտեսության բնական առանձնահատկությունները, իբր, խոչընդոտում են մեքենայական տեխնիկայի լայն կիրառմանը, տնտեսությունների խոշորացմանը և,

որ մանր հողատերերը ջանասիրության ու աշխատասիրության շնորհիվ մթերքներն արտադրում են ավելի փոքր ծախքերով, քան խոշորները: Ապացուցելու համար նրանք կեղծում էին ագրարային վիճակագրության տվյալները, ելնում հողատարածությունների բացարձակ չափերից (հաշվի չառնելով ներդրված կապիտալի մեծությունը), անտեսում գյուղացիության շերտավորումը, և, հիմնվելով աղավաղված «միջին» տվյալների վրա, փորձում էին ցույց տալ, որ մանր անհատական արտադրությունը կայուն դիրքեր ունի, կարող է մրցել խոշորի հետ ու կանխել գյուղում կապիտալիստական հարաբերությունների առաջացումը:

Վերլուծելով ԱՄՆ-ում, Ռուսաստանում և արևմտաեվրոպական մյուս երկրներում գյուղատնտեսության զարգացումը՝ Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ կապիտալիզմի տնտ. օրենքները գործում են ոչ միայն արդյունաբերության, այլև գյուղատնտեսության մեջ, իսկ կապիտալիզմի հիմնական և գլխավոր միտումը մանր արտադրության արտամղումն է խոշորի կողմից թե՛ արդյունաբերության և թե՛ երկրագործության մեջ, որի հետևանքով աշխատավոր գյուղացիության լայն զանգվածներ սնանկանում են: Այդ պրոցեսը հատկապես ուժեղանում է երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, կապված տեխ. առաջընթացի և գյուղատնտեսության մեջ մոնոպոլիստական կապիտալիզմի ներթափանցման հետ: «Կապիտալիզմի զարգացումը,— նշված է ՍՄԿԿ ծրագրում,— վերջնականապես հողմացրիվ արեց մանրգյուղացիական տնտեսության կայունության առասպելը: Մոնոպոլիաները տիրապետող դիրք են գրավել նաև գյուղատնտեսության մեջ: Միլիոնավոր ֆերմերներ և գյուղացիներ քշվում են իրենց հողերից, իսկ նրանց տնտեսությունը աճուրդի է հանվում» (ՍՄԿԿ ծրագիր, 1974, էջ 45):

Ժամանակակից պայմաններում «տնտեսության» կայունության տեսությունը «կատարելագործվել» և ներկայացվում է «ընտանեկան տնտեսությունների (ֆերմաների) կայունության» տեսության ձևով, որի նպատակը նույնն է՝ քողարկել գյուղացիության շերտավորումը, խարխլել բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, հավերժացնել կապիտալիստական կարգերը: *Ռ. Սարինյան*

**ՄԱՆՐԷԱԲԱՆԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ**, արդյունաբերության ճյուղ. իրականացնում է ոչ սննդային հումքից (հեղուկ և գազային ածխաջրածիններ), ինչպես նաև շաքարի ճակնդեղի, եգիպտացորենի արդյունաբերական մշակման թափոններից արժեքավոր նյութերի ստացման մանրէաբանական սինթեզը: Թողարկում է սպիտակուցա-վիտամինային կոնցենտրատներ, *ամինաթթուներ*, *վիտամիններ*, ֆերմենտային պատրաստուկներ, *անտիբիոտիկներ*, բույսերի պաշտպանության համար անհրաժեշտ բակտերային և վիրուսային պատրաստուկներ ևն: Մ. ա. լայն իմաստով ընդգրկում է *խմորման* հնագույն ճյուղերը (գինեգործություն, պանրագործություն ևն): Մ. ա. բուռն կերպով սկսել է զարգանալ XX դ. կեսերից, երբ կազմակերպվեց *մանրէներից* ստացվող անտիբիոտիկների՝ պենիցիլինի, ստրեպտոմիցինի ևն մեծածավալ արտադրությունը: Հաջողությամբ մշակվեցին մանրէների արդյունավետ ձևերի արհեստական ստացման գենետիկական մեթոդները, տեխնոլոգիան: Մ. ա. բացառիկ կարևոր նշանակություն ստացավ սննդային և կերային նյութերի ինդուստրիալ արտադրության համար: Ֆերմաներում անասունների կերին ավելացված 1 *տ* խմորասնկերը տալիս են լրացուցիչ 800—1200 *կգ* խոզի միս կամ 1500—2000 *կգ* թռչունի միս (կենդանի քաշով), 15—25 հզ. ձու ևն: Կերերի արդյունավետությունն ավելի բարձր է լինում, երբ կերաբաժնին ավելացվում են նաև վիտամիններ, ֆերմենտային պատրաստուկներ, կերային անտիբիոտիկներ: Այգիների, դաշտերի բերքատվության բարձրացմանը նպաստում են հիվանդությունների հարուցիչների և վնասատուների դեմ տարվող պայքարի մանրէաբանական միջոցները, ինչպես նաև մանրէային պարարտանյութերը: Կարևոր են նաև ինսեկտիցիդները, բույսերի աճման խթանիչները ևն: Մ. ա. արագացնում է արդ. որոշ ճյուղերի (սննդի, թեթև, քիմ.) տեխ. առաջընթացը: Քիմ. արդյունաբերության մեջ ամինաթթուներից և սպիտակուցային այլ նյութերից մանրէաբանական սինթեզի միջոցով կարելի է կազմակերպել արհեստական թելերի և թաղանթների արտադրությունը: ՀՍՍՀ-ում ստեղծվել և զարգանում են *լիզինի* (Չարենցավան) և այլ ամինաթթուների, կիտրոնաթթվի, բույսերի պաշտպանության մանրէային միջոցների, պարարտանյութերի մանրէաբանական արտադրության ճյուղերը:

**ՄԱՆՐԷԱԲԱՆՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ** ՀՍՍՀ ԳԱ, միկրոբիոլոգիայի ինստիտուտ, գիտահետազոտական հիմնարկություն Աբովյան քաղաքում (1973-ից): Կազմակերպվել է 1961-ին՝ Երևանում, 1943-ից գործող ՀՍՍՀ ԳԱ մանրէաբանության սեկտորի հիմքի վրա, Հ. Կ. Փանոսյանի ղեկավարությամբ: 1963-ից Մ. ի-ի դիրեկտորն է Է. Գ. *Աֆրիկյանը*: Մ. ի. ունի 8 լաբորատորիա (1979)՝ ազոտֆիքսող բակտերիաների, խմորող միկրոօրգանիզմների, սպորառաջացնող բակտերիաների, բջջային կենսասինթեզի, մանրէների կենսաքիմիայի, ֆոտոսինթեզող բակտերիաների, մանրէների հավաքածուի, հանքային մանրէաբանության: Մ. ի-ի աշխատանքներում կարևոր տեղ են գրավել մանրէների տարբեր խմբերի էկոլոգիայի հարցերին նվիրված հետազոտությունները, որոնց շնորհիվ բացահայտվել են զանազան մանրէների բնական տարածվածության բազմաթիվ օրինաչափությունները: Ինստ-ի բազմամյա աշխատանքները հնարավորություն են տվել մեկուսացնել և նկարագրել ազոտֆիքսող, կաթնաթթվային, սպորավոր, ֆիտոպաթոգեն, քեմոսինթետիկ բակտերիաների և սնկերի նոր տեսակներ ու տարատեսակներ: Ուսումնասիրված մանրէներից շատերն օգտագործվում են պարարտանյութերի, ինսեկտիցիդների, թթու կաթնամթերքների, գինու, հացի արտադրության և արդյունաբերության այլ ճյուղերում: Մանրէների էկոլոգիական հարմարվածության, մանրէային անտագոնիզմի ուսումնասիրման և անտիբիոտիկները բուսաբուծության ու շերամապահության մեջ կիրառելու բնագավառում Մ. ի. ՍՍՀՄ-ում եղել է առաջիններից մեկը: Մ. ի. գործուն մասնակցություն է ունեցել ՀՍՍՀ-ում *մանրէաբանական արդյունաբերության* կազմակերպմանը: Վերջին տարիներին Մ. ի-ում աշխատանքներ են տարվում՝ նվիրված ֆոտոտրոֆ միկրոօրգանիզմների և մանրէային ֆերմենտների ուսումնասիրմանն ու կիրառմանը, մանրէների կենսաքիմիային, գենետիկական ինժեներիայի արդիական հարցերին:

**ՄԱՆՐԷԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, մանրէակենսաբանություն, միկրոբիոլոգիա, անզեն աչքով անտեսանելի էակները՝ *միկրոօրգանիզմներն* ուսումնասիրող գիտություն. Ձևավորվել է *մանրադիտակի* գյուտից հետո: Մ-յան առաջացումից մի քանի հազար տարի առաջ մարդը չիմանալով միկրոօրգանիզմների գոյության մասին, դրանք օգտագործում էր կաթնաթթվային մթերքների, գինու, քացախի ևնի պատրաստման համար: Մ. սկսել է բուռն զարգանալ XIX դ. 2-րդ կեսից, երբ պարզվեց մանրէների առաջատար դերը տարբեր կենսք. պրոցեսներում, հատկապես վարակիչ հիվանդությունների առաջացման գործում: Մ-յան հիմնադիրներն են Լ. *Պաստյորը*, Ռ. *Կոխը* և Ի. *Մեչնիկովը*, որոնք բացահայտել են մանրէների ախտածին դերը և մշակել վարակիչ հիվանդությունների անընկալունակության հիմունքները: Այժմ Մ-յան որոշ բաժիններ՝ բժշկության, անասնաբուժության, գյուղատնտեսության և արդյունաբերության զարգացման պահանջներին համապատասխան, ձևավորվել են որպես առանձին գիտություններ: Ընդհանուր Մ. ուսումնասիրում է մանրէների կարգաբանությունը, փոփոխականությունը, տարածման և կենսագործունեության օրինաչափությունները, դրանց դերը բնության մեջ նյութերի շրջապտույտում (Ս. Վինոգրադսկի և ուրիշներ): Գյուղատնտեսական Մ. հետազոտում է հողի միկրոֆլորայի կազմը, մանրէների դերը հողի կենսաբանության և բերրիության, բույսերի սնման, հիվանդությունների առաջացման պրոցեսներում, մշակում գյուղատնտ. վնասատուների դեմ պայքարի մանրէաբանական միջոցներ, մանրէային պարարտանյութերի կիրառման մեթոդներ: Բժշկական Մ. զբաղվում է ախտածին մանրէների և վարակիչ հիվանդությունների ախտորոշման ու բուժման հարցերով: Նույն խնդիրները կենդանիների վերաբերյալ կատարում է անասնաբուժական Մ.: Բժշկ. Մ-ից անջատվել և որպես առանձին գիտություններ են զարգանում բժշկ. բակտերիոլոգիան, համաճարակագիտությունը, իմունոլոգիան: Նշված բնագավառում մեծ ծառայություններ ունեն Ն. *Գամալեան*, Դ. Զաբոլոտնին և ուրիշներ: Սննդային Մ. ուսումնասիրում է տարբեր խմորումներ առաջացնող մանրէները, մշակում սննդամթերքներ ստանալու և դրանց անվնաս պահպանելու մեթոդներ, որոնք օգտագործվում են գինու, պանրի, հացի, կաթնամթերքների ևնի արտադրության

մեջ: Ջ ր ա յ ի ն Մ. ուսումնասիրում է քաղցրահամ և աղի ջրերի միկրոֆլորայի քանակական ու որակական բաղադրությունը, միկրոօրգանիզմների դերը ջրամբարներում ընթացող կենսաքիմիական պրոցեսներում, կատարելագործում կանգնած ջրերի մաքրման մանրէաբանական մեթոդները: Ե ր կ ր ա բ ա ն ա կ ա ն Մ. հետազոտում է միկրոօրգանիզմների դերը բնության մեջ նյութերի շրջապտույտում, օգտակար հանածոների առաջացման և քայքայման պրոցեսներում, մշակում հանքից մետաղների ստացման մեթոդներ: Տ ե խ ն ի կ ա կ ա ն կամ ա ր դ յ ու ն ա բ ե ր ա կ ա ն Մ., մշակում է մանրէների կենսագործունեության, տարբեր նյութերի ստացման և արդյունաբերության ու ժողտնտեսության առանձին ճյուղերում դրանց օգտագործման ուղիներ և մեթոդներ (տես *Մանրէաբանական արդյունաբերություն*): Լայն տարածում է գտնում դեղագործական և քիմ. միացությունների արտադրության ինտենսիվացման համար միկրոօրգանիզմների և դրանց ֆերմենտների կիրառումը: Այս ուղղությունը հաջողությամբ զարգանում է խոբիլացված բջիջների և միկրոօրգանիզմների կիրառման շնորհիվ: Մ. առավել կարևոր նշանակություն է ստանում կենսաէներգետիկայի, արտաքին միջավայրի պահպանման, օրգանիզմների կենսագործունեության և ժառանգականության պրոցեսների կարգավորման պրոբլեմների լուծման գործում: Այդ կապակցությամբ ինտենսիվորեն զարգանում են մանրէների կենսաքիմիական, գենետիկական և կենսատեխնոլոգիան, որոնք առանձին գիտությունների նշանակություն են ստանում: ՀՍՍՀ-ում մանրէաբանական հետազոտություններ են կատարվում ՀՍՍՀ ԳԱ մանրէաբանության ինստ-ում, գենետիկայի Համամիութենական ԳՀԻ-ի հայկ. մասնաճյուղում, տարբեր հիմնարկների ու ուսումնական հաստատությունների լաբորատորիաներում ու ամբիոններում: Հայ մանրէաբանները արժեքավոր ուսումնասիրություններ են կատարել բժշկ. (Ա. Իսահակյան, Ա. Ալեքսանյան), անասնաբուժական (Գ. Շաքարյան, Վ. Հայրապետյան), գյուղտնտ. (Հ. Փանոսյան, Ա. Պետրոսյան, Ռ. Ղալաչյան, Փ. Սարուխանյան), ջրային (Մ. Ղամբարյան), տեխ. և արդ. (Լ. Երզնկյան, Բ. Ավագյան, Մ. Հովհաննիսյան) Մ-յան բնագավառներում: Մանրէաբանական կարևորագույն ամսագրերից են «Միկրոբիոլոգիա»-ն («Микробиология», 1932-ից), «Journal of Bacteriology» (Baltimore, 1916-ից), «Annales de l' Institut Pasteur» (Paris, 1887-ից) ևն:

*Գրկ.* Работнова И. Л., Общая микробиология, М., 1966; Шлегель Г., Общая микробиология, пер. с нем., М., 1972.

*Է. Աֆրիկյան*

**ՄԱՆՐԷԱՅԻՆ ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹԵՐ**, գյուղատնտեսական բույսերի համար օգտակար մանրէներ պարունակող պատրաստուկներ: Մ. պ. խթանում են հողի կենսաքիմիական պրոցեսները և բարելավում բույսերի արմատային սննդառությունը: ՍՍՀՄ-ում կիրառվում են նիտրագինը, ռիզոտորֆինը, *ալյուտաբակտերինը* և ֆոսֆորաբակտերինը:

Ն ի տ ր ա գ ի ն ն օգտագործվում է բակլազգի բույսերի պարարտացման համար: Պատրաստվում է այդ ընտանիքի յուրաքանչյուր տեսակին բնորոշ պալարամանրէների ակտիվ ռասայից՝ դրանք բազմացնելով վարակազերծված և օրգ. նյութերով հարուստ միջավայրում: Ստացվել է 1896-ին, Գերմանիայում: Ըստ ՍՍՀՄ-ում գործող ստանդարտի նիտրագինի 1 *գ*-ում սոյայի, լուպինի, գետնանուշի համար պետք է պարունակվի պալարամանրէների առնվազն 70 մլն բջիջ, իսկ մնացած բակլազգի բույսերի համար՝ 300 մլն: Մանրէները թափանցում են մազարմատների մեջ, գոյացնում պալարիկներ, ապա բազմանալով դրանց հյուսվածքներում, կապում են մթնոլորտի ազոտը, որի զգալի մասը յուրացվում է բույսի կողմից: Նիտրագինն ավելի արդյունավետ է, երբ կիրառվում է օրգ. և հանքային *պարարտանյութերի* հետ:

Ռ ի զ ո տ ո ր ֆ ի ն ը օգտագործվում է բակլազգի բույսերի սերմերը պալարամանրէներով վարակելու համար: Ստանում են տորֆի մանրուքը (որպես լցանյութ) γ ճառագայթներով վարակազերծելու և այդ սննդարար միջավայրում պալարամանրէների մաքուր կուլտուրայի ցանքի միջոցով:

Ֆ ո ս ֆ ո ր ա բ ա կ տ ե ր ի ն ը սպիտակ, բաց մոխրագույն կամ դեղնավուն փոշի է: Սրա յուրաքանչյուր *գ* պարունակում է 8,5—16 մլրդ մանրէների սպորներ, որոնք ունակ են ֆոսֆորօրգանական միացությունները մատչելի դարձնել բույսերի համար: Առավել արդյունավետ է կիրառել օրգ. և հանքային պարարտանյութերի հետ: Սովորաբար Մ. պ. օգտագործում են սերմերի կամ տնկանյութերի հետ:

**ՄԱՆՐԷՆԵՐ**, մ ի կ ր ո բ ն ե ր, *միկրոօրգանիզմների*, բակտերիաների, ճառագայթասնկերի, խմորասնկերի, միկրոսկոպիական սնկերի ևնի հավաքական անվանումը: Երբեմն Մ. են անվանում նաև բոլոր միկրոօրգանիզմներին:

**ՄԱՆՐԷՆԵՐԻ ԳԱՂՈՒԹՆԵՐ**, *միկրոօրգանիզմների* որևէ տեսակի (բակտերիաներ, խմորասնկեր) անզեն աչքով տեսանելի կուտակումները սննդամիջավայրում (հատկապես պինդ): Գաղութների ձևը, գունավորումը պայմանավորված են տվյալ միկրոօրգանիզմի մորֆոֆիզիոլոգիական առանձնահատկություններով, արտաքին միջավայրի պայմաններով, սննդամիջավայրի բաղադրությամբ (մսապեպտոնային ագար ևն): Նշված հատկանիշներն օգտագործվում են միկրոօրգանիզմների տեսակի նկարագրման և դասակարգման համար: Բնական պայմաններում Մ. գ. կարող են առաջանալ սննդանյութերի մակերեսին, հողում, ջրամբարների տիղմում ևն: Մանրէաբանության պրակտիկայում Մ. գ. կիրառվում են մաքուր կուլտուրաներ ստանալու համար:

**ՄԱՆՐԷՆԵՐԻ ԿԱՅՈՒՆՈՒԹՅՈՒՆ**, մանրէների դիմացկունությունը արտաքին միջավայրի անբարենպաստ գործոնների նկատմամբ: Մանրէների սպոր առաջացնող ձևերն ավելի կայուն են, քան վեգետատիվ ձևերը: Տիֆի, խոլերայի, բակտերիային դիզենտերիայի հարուցիչները գոյություն ունեն միայն վեգետատիվ ձևով և զանազան պայմաններում (բարձր և ցածր ջերմաստիճան, արևի ճառագայթներ ևն) կենսունակությունը պահպանում են *վրկ*-ից մինչև մի քանի ամիս: *Բոտուլիզմի* հարուցիչների սպորավոր ձևերն արտաքին միջավայրի պայմաններում իրենց կայունությունը պահպանում են ինչպես ախտահանիչ նյութերի, այնպես էլ ֆիզիկական գործոնների նկատմամբ: Ախտածին մանրէներն ունեն տարբեր կայունություն անտիբիոտիկների և սուլֆանիլամիդային պատրաստուկների նկատմամբ, որը կարևոր է գործնական բժշկության մեջ: Ախտածին առանձին տեսակի Մ. կ-յանը մեծ ուշադրություն է դարձվում գործնական համաճարակագիտության մեջ, քանի որ արտաքին միջավայրում դրանց գոյության պահպանումով է պայմանավորված վարակիչ հիվանդության օջախի գոյացումն ու հետագա տարածումը:

**ՄԱՆՐԷՆԵՐԻ ՓՈՓՈԽԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, միկրոօրգանիզմների մորֆոլոգիական, ֆիզիոլոգիա-կենսաքիմիական և այլ հատկությունների փոփոխությունը աճման և զարգացման պրոցեսներում: Կենդանական աշխարհի հիմնական հատկանիշներից մեկն է, որոշվում է ժառանգական գործոններով՝ արտաքին միջավայրի ազդեցության տակ: Նպատակադրված ներգործելով (ֆիզիկական, քիմ., կենսբ. ևն մեթոդներով) ժառանգական գործոնների վրա, փոխում են մանրէների ախտածին հատկությունները և փոփոխված մանրէներն օգտագործում զանազան վարակիչ հիվանդությունների կանխարգելման համար: Այժմ գոյություն ունեն բազմաթիվ կենդանի (ավիրուլենտ) պատվաստանյութեր (հակածաղկային, հակակարմրուկային), որոնց մեծ մասն օժտված է համաճարակաբանական բարձր արդյունավետությամբ: Մ. փ. լայնորեն կիրառվում է նաև գյուղտնտ. կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու նպատակով, անտիբիոտիկների արտադրության մեջ:

**ՄԱՆՐՈՒՍՈՒՄ**, հայկական միջնադարյան երաժշտա-ծիսական մատյան՝ բազմադրվագ զարդոլորուն երգեցողությունների ժողովածու, որի մի հատվածն ունեցել է ուսուցողական նշանակություն ևս: Մ. կոչվել է նաև խազգիրք, նրանում *խազերի* հոծության պատճառով:

*Ն. Թահմիզյան*

**ՄԱՆՑ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Դերջանի գավառում: 1909-ին ուներ 60 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ և արհեստներով: Գյուղում կար եկեղեցի և դպրոց: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է զաղթի ճանապարհին, Կամախի կիրճում:

**ՄԱՆՑ**, Մ ա ծ ա ն ց, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Սպեր գավառում: 1909-ին ուներ 45 տուն հայ բնակիչ: Գյուղում կար դպրոց և եկեղեցի: Զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ և մեղվաբուծությամբ: 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ, բնակչությունը տեղահանվել է և Բայբուրդի մոտերքում ոչնչացվել:

*Թ. Գևորգյան*

**ՄԱՆՑՈՒ** (Manzu) Ջակոմո (ծն. 24.12. 1908), իտալացի քանդակագործ: 1930-ական թթ. Միլանում հարել է հակաֆաշիստ-նկարիչների խմբին: Խաչելություն և խաչից իջեցնելու տեսարաններ



Ջ. Մանցու

պատկերող «նույն թեմայով վարիացիաներ» ռելիեֆների շարքով Մ. բողոքել է ֆաշիզմի գազանությունների դեմ («Խաչելություն գեներալի ներկայությամբ», 1942, հեղինակի սեփականություն): «Կարդինալներ» արձանաշարում ձգտել է բացահայտել կաթոլիկ եկեղեցու դերը ժամանակակից աշխարհում («Մեծ կարդինալ», 1955, Ժամանակակից արվեստի միջազգային պատկերասրահ, Վենետիկ): 1950-ական թթ. ստեղծել է կնոջ գեղեցկության ընդհանրական կերպարն արտահայտող աշխատանքներ: Զալցբուրգի տաճարի (1955—58) և Ռոտերդամի Սինտ-Լաուրենսկերկ եկեղեցու (1966—68) բրոնզյա դռներում, Հռոմի Ս. Պետրոսի տաճարի «Մահվան դարպասներ»-ում (1947—64) կրոնական, պատմախորհրդանշական և ժանրային մոտիվների համարձակ զուգորդմամբ արտահայտվել է Մ-ի կենսական և գեղ. նպատակադրումը՝ պայքարը բռնության դեմ մարդու ազատության համար: 1969—70-ին Կապրի կղզում ստեղծել է Վ. Ի. Լենինին նվիրված մարմարյա մոնումենտ: Մ. նաև գեղանկարիչ է, բնանկարիչ և նկարազարդող: Արժանացել



Ջ. Մ ա ն ց ու. «Բռնի մահ», Հռոմի Ս. Պետրոս տաճարի «Մահվան դարպաս»-ի հարթաքանդակի էսքիզ (1949—64)

է «Ժողովուրդների միջև խաղաղության ամրապնդման համար» միջազգային լենինյան մրցանակի (1966): ՍՍՀՄ գեղարվեստի ակադեմիայի պատվավոր անդամ է (1967):

*Գրկ.* [Л и б м а н М.], Джакомо Манцу, [М., 1961].

**ՄԱՆՈՒԵԼ** (ծն. և մահ. թթ. անհտ.), հայ ճարտարապետ, քանդակագործ և նկարիչ: Ստեղծագործել է Վասպուրականում, X դ. 1-ին կեսին: Եղել է Արծրունյաց իշխանական տան գլխավոր ճարտարապետը: Կառուցել է Ոստան ավանը և նրա պալատական համալիրը, Աղթամարի բերդ-քաղաքը, պալատը, հարակից շենքերը և նշանավոր պալատական տաճարը (տես *Աղթամար*):

Մ-ի մասին տեղեկություններ է հաղորդում Թովմա Արծրունու պատմությունը շարունակող Անանունը: Աղթամարի պալատի շինարարության առնչությամբ նա Մ-ին անվանել է «իմաստուն ճարտարապետ և հանճարեղ մարդ», իսկ տաճարի կառուցման մասին նույն պատմիչը գրում է, որ նրա «...ճարտարապետն էր Մանուելը, իմաստնությամբ լի և իր գործում զորավոր մի մարդ» («Պատմություն Արծրունյաց տան», 1978, էջ 300): Մ. ղեկավարել է նաև տաճարի ներքին ձևավորումը: Պատմիչը գրում է, որ «...սուրբ խորանի



Մ ա ն ու ե լ. Աղթամարի Ս. Խաչ եկեղեցու (915—921) արևելյան ճակատը

ներսի կողմը հրաշալիորեն կարգավորեց նկարապաճույճ գույներով, արծաթապատ դռներով և լի ոսկեհուռ զարդերով ոսկեզօծ պատկերներով...» (նույն տեղում, էջ 301):

Մ-ի ամենանշանավոր գործը՝ Աղթամարի տաճարը, արվեստների սինթեզի առավել կատարյալ օրինակն է միջնադարյան Հայաստանում և հնագույնը՝ քրիստոնեական արվեստում ընդհանրապես:

*Գրկ.* Տ ե ր-Ն ե ր ս ե ս յ ա ն Ս., Հայ արվեստը միջնադարում, Ե., 1975: Մ ն ա ց ա կ ա ն յ ա ն Ս., Աղթամարի բարձրաքանդակների պատկերագրական համակարգը, «ՍԳ», 1975, № 1: *Ս. Մնացականյան*

**ՄԱՆՈՒԵԼՅԱՆ** Մակարբե Մեկենասի (28.2. 1929, Նովոչերկասկ — 1.3.1980, Երևան), հայ սովետական ճարտարապետ, ՀՍՍՀ վաստակավոր ճարտարապետ (1972): Ավարտել է Երևանի Կ. Մարքսի անվ. պոլիտեխնիկական ինստ-ը (1951): Մ-ի նախագծերով կառուցվել են բնակելի տուն Կալինինի փողոցի վրա (1951), ՀՍՍՀ ԳԱ մաթեմատիկայի, մեխանիկայի և երկրաբանության ինստ-ների մասնաշենքերը (Ս. Սաֆարյանի հետ, 1960-ական թթ.), ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ինստ-ի համալիրը Աշտարակում (Ս. Գուրզադյանի հետ, 1961), ֆիզիկական հետազոտությունների ինստ-ի համալիրը բնա-



Մ. Մ ա ն ու ե լ յ ա ն. Երևանի ավտոդողերի գործարանի պրոֆիլակտորիումը (1965) Արզնիում

կելի ավանով Աշտարակում (1965), ակումբ Արարատ գյուղում, պրոֆիլակտորիում Արզնիում, հյուրանոցներ Էջմիածնում և Թալինում, Երկաթուղայինների մշակույթի տունը Երևանում (Ս. Գուրզադյանի հետ, 1966), Մեծամորի թանգարանը (1969):

**ՄԱՆՈՒԻ ՕՐԵՆՔՆԵՐ**, հին հնդկական կրոնա-բարոյախոսական, իրավական նորմերի ժողովածու՝ կազմված մ. թ. ա. III դարում: Ըստ Մ. օ-ի, քաղ. կարգը Հնդկաստանում եղել է աստվածապետական բռնակալությունը, կառավարող խավերը՝ հոգևորականությունն ու ստրկատերերը: Ստրուկներն առանձին կաստա չեն կազմել: Մ. օ. կարգավորել են պետ., վարչական, քրեական, քաղաքացիական, ամուսնաընտանեկան, դատական իրավահարաբերությունները: Պետությունն ու սահմանված կարգերը, բռնությունը, այդ թվում պատիժը, համարվել են աստծո ստեղծած, ուստի իրավախախտողների դեմ կիրառվող անողոք միջոցառումները՝ արդարացի ու անհրաժեշտ: Պատիժը միաժամանակ համարվել է բոլոր էակների պաշտպանությունն ու արդարությունն իրականացնելու միջոց: *Ս. Թովմասյան*

**ՄԱՆՈՒԻԼ I** Կ ո մ ն ե ն ո ս (Μανουήλ ὁ Κομνηνός) (1123—1180), Բյուզանդիայի կայսր 1143-ից: Կոմնենոսների դինաստիայից: Հոր՝ *Հովհաննես II Կոմնենոսի* օրոք մասնակցել է թուրքերի դեմ արշավանքներին, աչքի ընկել ռազմ. տաղանդով: Բյուզանդիայից կախման մեջ է դրել Անտիոքի դքսությունը, կայսրությանը ենթարկել հունգարներին ու սերբերին, պարտության մատնել պեչենեգներին (1150—53), Կիևի իշխանի գահի համար պայքարում՝ պաշտպանել Յուրի Դոլգորուկիին: Նրա օրոք նորմանները գրավել են Հունաստանի մի շարք շրջաններ ու կղզիներ: 1154-ին Մ. նրանց է զիջել Հարավային Իտալիան, իսկ 1176-ին Միրիոկեֆալոնի ճակատամարտում պարտվել է սելջուկներից:

Մ. I-ի կառավարման սկզբին Կիլիկիայի Հայոց իշխան *Թորոս Բ* Կիլիկիայից վտարեց բյուզանդացիներին, ընդարձակեց իշխանության սահմանները: 1152-ին բյուզանդական զորավար Անդրոնիկոս Կոմնենոսը արշավեց Կիլիկիա և Մամեստիայի մոտ ծանր պարտություն կրեց հայերից: 1158-ին Մ. I-ին հաջողվեց գրավել Դաշտային Կիլիկիան, իսկ 1159-ին դաշնակցեց Թորոս Բ-ի և Երուսաղեմի թագավորի հետ՝ ընդդեմ Հալեպի ամիրա Նուր աղ Դինի: Մ. I դիմել է հայկ. եկեղեցու պետ-

րին հայ և բյուզանդական եկեղեցիների միության հարցով ու մերժվել: Ներսես Շնորհալու «Թուղթ ընդհանրական»-ում պահպանվել է Մ. I-ի՝ հայերին ուղղված նամակների հայերեն թարգմանությունը, որոնց հուն. բնագրերը կորել են:

*Գրկ.* Օրմանյան Մ., Ազգապատում, հ. 1, ԿՊ, 1912: Микаелян Г., История Киликийского армянского государства, Е., 1952. *Հ. Բարթիկյան*

**ՄԱՆՈՒԻԼՍԿԻ** Դիմիտրի Զախարովիչ (1883—1959), սովետական պետական և կուսակցական գործիչ: ՈւՍՍՀ ԳԱ ակադեմիկոս անդամ (1945): Կոմունիստական կուսակցության անդամ 1903-ից: Մ. Կրոնշտադտի, ապա Սվեաբորգի զինված ապստամբությունների (1906) կազմակերպիչներից է. ձերբակալվել և դատապարտվել է աքսորի, բանտից փախել է Կիև, այստեղ մտել է ՌՍԴԲԿ կոմիտեի մեջ: 1907—12-ին տարագրվել է Ֆրանսիա, մտել «Վպերյոդ» խմբի մեջ: 1912—13-ին կուսակցական աշխատանք է կատարել Պետերբուրգում և Մոսկվայում, ապա նորից տարագրվել Ֆրանսիա: 1917-ի մայիսին վերադարձել է Ռուսաստան:

ՌՍԴԲ(բ)Կ VI համագումարում մտել է բոլշևիկյան կուսակցության մեջ: 1922-ից աշխատել է Կոմինտերնում, 1924-ից՝ Կոմինտերնի ԳԿ-ի (ԿԻԳԿ) Նախագահության անդամ, 1928—43-ին՝ ԿԻԳԿ քարտուղար: 1942—44-ին աշխատել է


Դ. Զ. Մանուիլսկի

ՀամԿ(բ)Կ ԿԿ-ում և Կարմիր բանակի գլխավոր քաղ. վարչությունում, 1944-ից՝ ՈւՍՍՀ ԺԿԽ նախագահի տեղակալ և ՈւՍՍՀ արտաքին գործերի ժողկոմ, 1946—53-ին՝ ՈւՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ: Կուսակցության X—XIX համագումարների պատգամավոր, XI համագումարում ընտրվել է ԿԿ անդամության թեկնածու, XII—XVIII-ում՝ անդամ: ՍՍՀՄ II—III գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Հեղինակ է միջազգային բանվորական և կոմունիստական շարժման ստրատեգիայի ու տակտիկայի հարցերին նվիրված մի շարք աշխատությունների: Պարգևատրվել է Լենինի 3 և Կարմիր դրոշի շքանշաններով:

**ՄԱՆՈՒԼ** (Felis manul), կատվազգիների ընտանիքի գիշատիչ կաթնասուն: Մարմնի երկարությունը 52—65 *սմ* է, պոչինը՝ 21—25: Մարմինը զանգվածեղ է, կարճ ոտքերով, գլուխը՝ տափակ, պոչը՝ հաստ. ունի այտամորուքներ: Դեղնագորշ, երկար, խիտ ու փափուկ մազերով մորթու վրա կան սև խալեր (գլխին) ու շերտեր (մարմնին ու պոչին): Տարածված է լեռնային քարքարոտ տափաստաններում ու կիսաանապատներում: ՍՍՀՄ-ում հանդիպում


Մանուկ Բեյ


Ա. Թ. Մանուկյան

է Միջին Ասիայում, Անդրբայկալում, ՀՍՍՀ-ում (Արարատի շրջանում): Հազվագյուտ կենդանի է: Ակտիվ է մթնշաղին և գիշերը, սնվում է կրծողներով, թռչուններով, մողեսներով:

**ՄԱՆՈՒԿ ԲԵՅ**, Միրզայան Մանուկ Մարտիրոսի [1769, Ռուշչուկ —20.6.1817, Հնչեշտ (այժմ՝ Կոտովսկ)], ռումինահայ դիվանագետ, առևտրական գործիչ: 1802-ին Վալաքիայի իշխանից ստացել է ազնվականի տիտղոս, 1806-ին նշանակվել Ռուշչուկի զավառապետի խորհրդական: 1807-ին թուրքդանության զորքի հրամանատար Մուստաֆա փաշան Մ. Բ-ին է հանձնել բանակի մատակարարման, ռուսների հետ հաշտության բանակցություններ վարելու գործը: 1808-ին թուրք. սուլթանից ստացել է Մոլդովայի իշխանի և բեյի աստիճան, բայց ունեցել է ռուս. կողմնորոշում: Ռուս. հրամանատարությանն աջակցելու համար 1810-ին պարգևատրվել է Ս. Վլադիմիրի III աստիճանի խաչով: Դանուբյան ռուս. բանակի հրամանատար Մ. Ի. Կուտուզովը Մ. Բ-ի իջևանատանն էր հաստատել իր բանակի շտաբը: Գործուն մասնակցություն է ունեցել 1812-ի ռուս-թուրքական հաշտության պայմանագրի կնքմանը: Խուսափելով թուրք. կառավարության հաշվեհարդարից, 1813-ին Բուխարեստից անցել է Տրանսիլվանիա, ապա հաստատվել Քիշնևում և դարձել ռուսահպատակ: 1814-ին Մ. Բ-ին շնորհվել է պետ. խորհրդականի աստիճան:

Մ. Բ. մեծ ծառայություններ է մատուցել Ռուշչուկի և բալկանյան այլ քաղաքների տնտ. զարգացմանը (տրամադրել է փոխառություններ, հիմնել մանուֆակտուրաներ, կալվածքներ են): Նրա անվամբ կոչվել են ռումին. երկու գյուղ: Մ. Բ. Հայաստանի ազատագրումը կապել է Ռուսաստանի հետ: Այցելել է Հայաստան, նյութական օժանդակություն ցույց տվել Էջմիածնի, Մուշի, Երուսաղեմի և այլ վայրերի վանքերին: Բուխարեստի հայոց եկեղեցու մերձակայքում հիմնել է քաղաքում առաջին հայկ. դպրոցը (1817): Մ. Բ-ի արխիվը պահվում է Բուխարեստի Պատմության թանգարանում:

*Գրկ.* Հովնանյան Ղ., Միրզայան Մանուկ Բեյին վարուց պատմությունը, Վնն., 1852: Սիրունի Հ. Ճ., Էջեր Մանուկ Բեյի կյանքեն, «ԲՀԱ», 1969, № 3, 1970, № 2—3: *Ս. Քոլանջյան*

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Ազատ Մինասի [3(15).12. 1878, գ. Մեծ Ազարակ (Երզնկայի գավառ)—7.5.1958, Երևան], հայ սովետական կոմպոզիտոր, մանկավարժ և խմբավար: ՎՍՍՀ (1936) և ՀՍՍՀ (1952) արվեստի վաստ. գործիչ և վաստ. ուսուցիչ, ՀՍՍՀ աշխատանքի հերոս (1935): Սովորել է Ք. Կարա-Մուրզայի խմբավարական (1899) և Պետերբուրգի պալատական երգչախմբի դասընթացներում (1903—05): Որպես մանկավարժ և խմբավար աշխատել է Թբիլիսիի և Երևանի հայկ. դպրոցներում: Հեղինակ է բազմաթիվ մանկական երգերի և խմբերգերի (ամփոփված «Փնջիկ»-ների 10 ժողովածուներում) և մի շարք մանկական օպերաների՝ «Չարի վերջը» (ըստ Հ. Թումանյանի, բեմ. 1936), «Ոսկե ձկնիկի հեքիաթը» (ըստ Պուշկինի, 1937), «Սասունցի մանուկ Դավիթ» (ըստ Վ. Մանվելյանի, 1939), «Համառ զորտը» (1946) և «Կամակոր Նունիկը» (ըստ Վ. Մխիթարյանի, 1952): Կազմել և հրատարակել է «Ա. Ս. Պուշկինը դպրոցական երգերում» (1937) և «Դպրոցական երգարան» (1940): Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի և Լենինի շքանշաններով:

*Գրկ.* Մուրադյան Մ., Ազատ Մանուկյան, Ե., 1977: Атаян Р., Мурадян М., Тадевосян Ал., Армянские композиторы, Е., 1956. *Մ. Մուրադյան*

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Ալեք Թագվորի (ծն. 1901, Զմյուռնիա), սփյուռքահայ հասարակական գործիչ, մեծահարուստ արդյունաբերող, *Հայկական բարեգործական ընդհանուր միության* նախագահ: Մասնագիտությամբ ինժեներ: 1920-ից ապրում է ԱՄՆ-ում (1924-ից՝ Դետրոյտում): 1943-ին ընտրվել է ՀԲԸՄ վարչական խորհրդի կազմում, 1953-ից ՀԲԸՄ նախագահն է (ցմահ): 1968-ին 1 մլն դոլլար հիմնադրամով հիմնել է «Ալեք Մանուկյան մշակութային հիմնադրամը», որի նպատակն է զարկ տալ հայկ. մշակույթի զարգացմանը սփյուռքում, նյութապես օժանդակել և խրախուսել սփյուռքահայ ստեղծագործողներին: Գումարներ է նվիրաբերում նաև հայկ. դպրոցներին, մշակութային միություններին, մարզական ու երիտասարդական կազմակերպություններին, ծերանոցներին, գրադարաններին (1980-ին այդ նվիրատվություններն անցել են 10 մլն դոլլարից): Հանդես է գալիս հօգուտ սփյուռքի և Սովետական Հայաստանի կապերի ամրապնդման: *Պ. Մարտիրոսյան*

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Անդրանիկ Ալեքսանդրի [ծն. 17.5.1917, գ. Բունիս (այժմ՝ ՀՍՍՀ Սիսիանի շրջանում)], Սովետական Միության հերոս (27.2.1945), գվարդիայի կապիտան: ՍՄԿԿ անդամ 1940-ից: Հայրենական մեծ պատերազմում աչքի է ընկել Սևաստոպոլի, Ստալինգրադի, Կուրսկի պաշտպանության, Ուկրաինայի ազատագրման համար մղված մարտերում: Սովետական Միության հերոսի կոչման արժանացել է 1945-ի հունվարին Լեհաստանի ազատագրման ժամանակ կատարած հետախուզական գործողությունների համար: Մասնակցել է նաև Օդերի գետանցմանը, Օդերի, Ֆրանկֆուրտի և Բեռլինի գրավմանը: Պարգևատրվել է Լենինի, Կարմիր դրոշի 2, Կարմիր աստղի շքանշաններով: 1946-ին զորացրվել է, աշխատանքի անցել Բաքվում:

Դիմանկարը տես հաջորդ էջում:

*Ռ. Գրիգորյան*

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Աշիկ Ավետի (1.10.1903—10.1.1977), սովետական տնտեսագետ:

Տնտ. գիտ. դ-ր (1963), պրոֆեսոր (1966): ՍՄԿԿ անդամ 1920-ից: 1926-ին ավարտել է Անդրկովկասյան կոմունիստական համալսարանը, 1929-ին՝ Կարմիր պրոֆեսուրայի ինստ-ը (Մոսկվա): 1930—35-ին Ամերիկա-սովետական բաժնետիրական ընկերության (Ամտորգ) տնտ. վարչության պետ Նյու Յորքում: 1935-ից ՍՍՀՄ արտաքին առևտրի մենաշնորհի ինստ-ի դիրեկտոր: 1939—41-ին և 1947—56-ին գիտական աշխատանք է կատարել ՍՍՀՄ ԱԱՄ կոնյունկտուրայի ԳՀԻ-ում, միաժամանակ դասախոսել Արտաքին առևտրի ինստ-ում և Արտաքին առևտրի ակադեմիայում: 1956-ից ՍՍՀՄ ԳԱ համաշխարհային էկոնոմիկայի և միջազգային հարաբերությունների ինստ-ի սեկտորի վարիչ: Եղել է միջազգային մի շարք կոնֆերանսների ու բանակցությունների տնտ. փորձագետ ու խորհրդական, ՍՍՀՄ ԱԱՄ կոնյունկտուրայի ԳՀԻ-ի, ՍՍՀՄ ԳԱ համաշխարհային էկոնոմիկայի և միջազգային հարաբերությունների ինստ-ի կազմակերպիչներից: Գիտական աշխատությունները (թարգմանվել են աշխարհի տարբեր լեզուներով) վերաբերում են համաշխարհային կապիտալիստական էկոնոմիկայի պրոբլեմների ուսումնասիրությանը: Պարգևատրվել է Ժողովուրդների բարեկամության և այլ շքանշաններով:

*Երկ.* Капиталистический рынок нефти, М., 1953 (соавтор Козарев К. Н.); Проблемы послевоенного развития экономики капиталистических стран, М., 1966.

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Արամ, Արամ Փաշա [իսկական անունը՝ Հովհաննիսյան Սարգիս (1879, Շուշի —29.1.1919, Երևան)], դաշնակցական գործիչ: Ավարտել է Երևանի թեմական դպրոցը (1901): 1905-ին հաստատվել է Վանում, պայքարել թուրք. կառավարության հայահալած քաղաքականության դեմ: Մեծ եղեռնի ժամանակ մասնակցել է Վանի ինքնապաշտպանությանը: Ռուս. զորքերի՝ Վան մտնելուց (1915-ի մայիս) հետո 4 ամիս եղել է Վանի և նրա շրջակայքի կառավարիչը (նահանգապետ): Վանի հայության գաղթից հետո, 1916—17-ին, հաստատվել է Թիֆլիսում, աշխատել *Ազգային բյուրոյում*: Որպես վերջինիս լիազոր-ներկայացուցիչ, 1917-ի վերջին տեղափոխվել է Երևան, եղել է Հայաստանի բուրժ. հանրապետության ներքին գործերի նախարար:

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Գուժ Ալեքսանդրի (ծն. 6.5. 1937, Լենինական), հայ սովետական դերասան: ՀՍՍՀ ժող. արտիստ (1980): 1958-ին ավարտել է Երևանի գեղարվեստա-թատերական ինստ-ի դերասանական ֆակուլտետը: 1958—59-ին՝ Ղափանի դրամատիկական, 1959—67-ին՝ Երևանի պատանի հանդիսատեսի, 1967-ից՝ Երևանի դրամատիկական թատրոնների դերասան: Լավագույն անձնավորումներից են՝ Միտրոֆան (Ֆոնվիզինի «Տհասը»), Սարո («Անուշ», ըստ Հ. Թումանյանի), Պյոտր (Գորկու «Քաղքենիներ»), Բուկինգհայմ (Շեքսպիրի «Ռիչարդ III»), Բլյունչլի (Շոուի «Շոկոլադ ուտող զինվորը»), Կարանդիշև (Ա. Օստրովսկու «Անօժիտը»): Կինոյում նկարահանվում է 1964-ից: Դերերից են՝ Մարսելին («Սգավոր ձյունը», ըստ Ա. Թռուայայի, ռեժ. Յու. Երզնկյան, 1978, հեռուստատեսային կինոնկար), Արմեն («Կյանքի լավագույն կեսը», ռեժ. Ա. Մկրտչյան, 1979), Գայ («Մեռիր ձիու վրա», ռեժ. Գ. Մելիք-Ավագյան, 1980):


Ա. Ա. Մանուկյան


Հ. Բ. Մանուկյան

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Էդվարդ Վահանի [ծն. 16(29).9.1908, Նոր Բայազետ (այժմ՝ Կամո)], հայ սովետական բալետմայստեր: ՀՍՍՀ ժող. արտիստ (1965): 1927-ին ավարտել է Երևանի՝ Վ. Արիստակեսյանի ղեկավարած պարարվեստի ուսումնարանը: 1932-ից եղել է Երևանի օպերայի և բալետի թատրոնի բալետային խմբի արտիստ: 1937-ից՝ *Հայկական ժողովրդական երգի-պարի անսամբլի* բալետմայստեր: Մ. մեծ ավանդ է ներդրել հայկ. ազգային պարը պրոֆեսիոնալ բեմում ցուցադրելու գործում: 1958-ին կազմակերպել և մինչև 1966-ը ղեկավարել է Հայաստանի պարի անսամբլը: 1966—74-ին եղել է Հայֆիլհարմոնիայի գլխավոր բալետմայստերը, 1974-ից ժող. ստեղծագործության տան պարարվեստի բաժնի վարիչն է:

*Գ. Ստեփանյան*

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Լիպարիտ Խաչատուրի (ծն. 28.11. 1909, Բաքու), հայ սովետական անատոմ: Բժշկ. գիտ. թեկնածու (1953): 1935-ին ավարտել է Երևանի բժշկ. ինստ-ի բուժական ֆակուլտետը: 1935-ից աշխատել է նույն ինստ-ի մարդու նորմալ անատոմիայի ամբիոնում (1966—77-ին՝ ամբիոնի վարիչ): Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: 1970—73-ին եղել է մանկաբուժական ֆակուլտետի դեկան: Մ-ի գիտական աշխատանքները վերաբերում են ծայրամասային նյարդերի և զարկերակային ու երակային անոթների ուսումնասիրությանը: Հայտնաբերել է պարանոցային նյարդա-անոթային կապոցի տեղադրության մի քանի տարբերակներ, որոնք մեծ նշանակություն ունեն գործնական վիրաբուժության համար:

1966—79-ին եղել է ՀՍՍՀ անատոմների, հյուսվածաբանների և սաղմնաբանների ընկերության վարչության նախագահի տեղակալ: Պարգևատրվել է Հայրենական պատերազմի II աստիճանի և Կարմիր աստղի շքանշաններով:

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Հակոբ Բալաբեկի (ծն. 1916, Արմավիր), Սովետական Միության հերոս (15.5.1946), ավիացիայի մայոր: ՍՄԿԿ անդամ 1943-ից: Ավարտել է Սևաստոպոլի Ա. Ֆ. Մյասնիկյանի անվ. օդաչուական դպրոցը (1937): 1938-ին մասնակցել է Խասան լճի շրջանում ճապոնական միլիտարիստների դեմ մղված մարտերին, 1942-ի վերջից (որպես էսկադրիլիայի հրամանատար)՝ Հայրենական մեծ պատերազմին: Աչքի է ընկել Կովկասի պաշտպանության, Կուբանի, Ուկրաինայի, Ղրիմի, Բելոռուսիայի ազատագրման, Բեռլինի գրավման համար մղված մարտերում: Սովետական Միության հերոսի կոչմանն արժանացել է էսկադրիլիան (որի 5 անդամներ նույնպես արժանացել են այդ կոչմանը) հմտորեն ղեկավարելու և ցուցաբերած անձնական խիզախության համար: Պատերազմից հետո ծառայել է ԳԴՀ-ի սովետական զորամասերում: Զորացրվելուց (1949) հետո աշխատանքի է անցել Խարկովում, 1952-ից՝ Երևանում: Պարգևատրվել է Լենինի, Կարմիր դրոշի 3, Հայրենական պատերազմի I աստիճանի և այլ շքանշաններով:

*Ք. Գրիգորյան*

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Միքայել Մանուկի [15.8. 1911, գ. Մոկս (Վանի նահանգում) —11.8. 1976, Երևան], հայ սովետական մեխանիկ: Ֆիզմաթ գիտ. դ-ր (1965), պրոֆեսոր (1966), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1970): ՍՄԿԿ անդամ 1952-ից: Ավարտել է Երևանի պետ. համալսարանը (1936): 1940-ից դասավանդել է նույն համալսարանում, 1959—76-ը՝ մեխանիկայի ամբիոնի վարիչ, 1961—65-ը՝ մեխմաթ ֆակ-ի դեկան: Աշխատությունները վերաբերում են ծերացող նյութերի սողքի ժառանգականության տեսությանը:

*Երկ.* Кручение тел с учетом ползучести, Е., 1973.

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Ռաֆայել Գևորգի (1912—1953), կրկեսի հայ արտիստ, էկվիլիբրիստ (կայունորդ): ՀՍՍՀ վաստ. արտիստ (1940): ՍՄԿԿ անդամ 1941-ից: Կրկեսում աշխատել է 1921-ից: Եղել է ձողախաղացների համարի ղեկավարը և մասնակիցը: Ունեցել է հավասարակշռության եզակի զգացողություն. ճակատի վրա պահել է երեք և չորս մարմնամարզիկով ձողի հավասարակշռությունը, ավարտին՝ երեք անիվ, պտույտներ գործող խաղընկերուհիներով:

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Ռուբեն Խաչատուրի [26.12. 1906, գ. Գյամրեզ (այժմ՝ Կամարիս, ՀՍՍՀ Աբովյանի շրջան)—24.8.1978, Երևան], ծանր աթլետ: ՍՍՀՄ սպորտի վաստ. վարպետ (1942), աշխարհի և ՍՍՀՄ ռեկորդակիր (1937, ձախ ձեռքով պոկում վարժությունից): ՍՄԿԿ անդամ 1943-ից: Եղել է ծանրամարտի հանրապետական ֆեդերացիայի անդամ,համամիութենական կարգի մրցավար: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի և «Պատվո նշան» շքանշաններով:

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Սարգիս Նազարի [1883, գ. Բաշչիֆթլիկ (Քղիի գավառում)—1938], մանկավարժ, գրականագետ, թարգմանիչ: Պրոֆեսոր 1935-ից: Սովորել է Կարինի Արծնյան վարժարանում, Էջմիածնի Գևորգյան ճեմարանում (1903), Պետերբուրգի համալսարանի արևելագիտության ֆակուլտետում (1903—05): Մ. ուսանել է նաև Բեռլինում (1905—08), Լայպցիգում (1908—10), մասնագիտացել գերմաներենի, գրականության և փիլիսոփայության մեջ: 1910—12-ին աշխատել է Կարինի Սանասարյան վարժարանում, իսկ մինչև 1915-ը՝ Սեբաստիայում, ուր տեղափոխվել էր Սանասարյան վարժարանը: 1918—22-ին մանկավարժական-գրական

աշխատանք է կատարել Կ. Պոլսում: Դասավանդել է Կեդրոնական, Պեզեզյան, Դպրոցասեր տիկնանց, Նոր դպրոց վարժարաններում: 1922-ին տեղափոխվել է Սովետական Հայաստան, աշխատել Երևանում՝ Մյասնիկյանի անվ. միջնակարգ դպրոցում (1923—29), միաժամանակ, Երևանի համալսարանում և Խ. Աբովյանի անվ. մանկավարժական ինստ-ում, եղել է օտար լեզուների ամբիոնի վարիչ, դասավանդել գերմ. և անտիկ գրականություն: Մ. հեղինակ է «Հովհ. Թումանյանի «Անուշը» (1931), «Րաֆֆիի Ջալալեդդինի ծագումը» (1932) աշխատությունների: Նշանակալի ավանդ ունի Հ. Պարոնյանի երկերի առաջին գիտական լիակատար հրատարակման գործում: Նրա ջանքերով հատորները լույս են տեսել գիտական-բանասիրական հմուտ ու հարուստ ծանոթագրություններով: Թարգմանել է (տողացի) Հայնեի «Երգերի գիրք»-ը (1935) (չափածոյի են վերածել Վ. Նորենցը և Գ. Սարյանը), Գյոթեի «Ֆաուստը» (Ե. Չարենցի հետ) և այլ գործեր:


Մ. Ն. Մանուկյան

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Սարիբեկ Արմենակի (ծն. 10.2.1917, Երևան), հայ սովետական գրականագետ: Բանասիրական գիտ. դ-ր (1972): ՍՄԿԿ անդամ 1955-ից: Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: 1945-ին ավարտել է Երևանի համալսարանի բանասիրական ֆակուլտետը: 1949-ից աշխատում է ՀՍՍՀ ԳԱ Մ. Աբեղյանի անվ. գրականության ինստ-ում: Հրատարակել է «Գեղամ Սարյան» (1954), «Ժողովրդների բարեկամության արտացոլումը սովետահայ գրականության մեջ» (1956), «Վահան Թոթովենց» (1959), «Պերճ Պռոշյան» (1964), «Լևոն Բաշալյան» (1969), «Հակոբ Հակոբյան» (1975) աշխատությունները: Մասնակցել է «Հայ նոր գրականության պատմության» (h. 1—5, 1962—79, ՀՍՍՀ պետ. մրցանակ, 1980) ստեղծման գործին: Պարգևատրվել է Հայրենական պատերազմի II աստիճանի և Կարմիր աստղի շքանշաններով:

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Սոս Մնացականի [ծն. 15(28).1.1911, գ. Չիբուխլու (այժմ՝ ՀՍՍՀ Սևանի շրջանի գ. Ծովագյուղ)], հայ սովետական ճարտարապետ: ՀՍՍՀ վաստ. ճարտարապետ (1961): Ավարտել է Երևանի պոլիտեխնիկական ինստ-ը (1937): 1936—41-ին կազմել է մի շարք բնակավայրերի (Էջմիածին, Սևան ևն) գլխավոր հատակագծերը: Մ-ի նախագծերով կառուցվել են Թումանյանի (1945—55), «ԿԱՆԱՋ» գործարանի (1948—62) բանավանները, Էջմիածնի (1945—46) և «ԿԱՆԱՋ» գործարանի (1953—54) մշակույթի պալատները, կույրերի տուն-կոմբինատը Երևանում (1947), բնակելի տներ Ազատության (1949—52), Օրջոնիկիձեի (1950—52) պողոտաների վրա (երկուսն էլ՝ Ջ. Տոնիկյանի հետ) ևն, Լենինականում, ակումբներ Ջեյվայում (1949), Սևանա թերակղզում (1952—53), Ծովագյուղում (1965—1966), Աշտարակում (1972), երկաթուղային կայարաններ (1965—70), Հայրենական պատերազմում զոհվածների հուշարձան Ծովագյուղում (1967): Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:


Ս. Մ ա ն ո ւ կ յ ա ն. Երևանի «ԿԱՆԱՋ» գործարանի մշակույթի պալատը (1953—54)

**ՄԱՆՈՒԿՅԱՆ** Փայլակ Սարգսի [ծն. 14(27). 12.1909, ք. Կարս], հայ սովետական ճարտարապետ: ՀՍՍՀ վաստ. շինարար (1961): ՍՄԿԿ անդամ 1943-ից: Ավարտել է Երևանի պոլիտեխնիկական ինստ-ի շինարարական ֆակուլտետը (1935): Ստեղծագործություններից են՝ Լենինականի (1933), Աշտարակի (1949), Ջերմուկի (1952) գլխավոր հատակագծերը, բնակելի և վարչական շենքեր, Երևանի Կիրովի այգում կանգնեցված կարմիր բանակի մարտիկներին նվիրված հուշայունը (1940, ճարտ. Հ. Դավթյանի հետ):

**ՄԱՆՈՒՄ**, *մանող մեքենայով* (հնում՝ *ճախարակով* և ձեռքի իլիկով) մանվածքի կամ նախաթելի պատրաստում: Լայն իմաստով *մանածագործությունը* կազմող տեխնոլոգիական պրոցեսների ամբողջություն:

**ՄԱՆՈՒՇԱԿ** (Viola), մանուշակազգիների ընտանիքի բազմամյա կամ միամյա խոտաբույսերի, երբեմն կիսաթփերի ցեղ: Տերևները հերթադիր են կամ արմատամերձ վարդակով, սովորաբար՝ տերևակիցներով: Ծաղիկները միայնակ են, երկսեռ, հնգաթերթ, մանուշակագույն, սպիտակ կամ բազմագույն: Պտուղը եռափեղկ տուփիկ է: Հայտնի է Մ-ի շուրջ 500 տեսակ, գլխավորապես Հյուսիսային կիսագնդի բարեխառն գոտում և Անդերում (ՍՍՀՄ-ում՝ 100 տեսակ, ՀՍՍՀ-ում՝ 14): Մ-ի որոշ տեսակներ օգտագործվում են ծաղկաբուծության (Վիտրոկի պարտեզային Մ. իր բազմաթիվ սորտերով), եթերայուղերի արտադրության (բուրավետ Մ.) և բժշկության (եռագույն Մ.) մեջ:

**ՄԱՆՈՒՇԱԿ**, հայաբնակ գյուղ Թուրքիայում, Իզմիրի վիլայեթի Նիկոմեդիա գավառում: Հիմնադրել են համշենահայերը, 1892-ին: 1915-ին գյուղն ուներ 123 տուն (898 շունչ) բնակիչ: Զբաղվում էին ծխախոտի մշակությամբ, անասնապահությամբ, մեղվաբուծությամբ, թռչնաբուծությամբ, նաև շերամապահությամբ: Կար եկեղեցի և երկսեռ վարժարան (վեցամյա և քառամյա): 1915-ին գյուղի բնակչությունը բռնի տեղահանվել և ոչնչացվել է: Կոտորածից փրկված 3 ընտանիք 1918-ին վերադարձել է Մ., իսկ 1923-ին՝ տեղափոխվել Սովետական Հայաստան:

*Բ. Թոռլաքյան*

**ՄԱՆՈՒՇՅԱՆ** Միսաք Գևորգի [1906, Ադիյաման (Արևմտյան Հայաստան)—21.2. 1944, Փարիզ], հայ բանաստեղծ, ֆրանսիական *Դիմադրության շարժման* գործիչ: Ֆրանսիայի կոմկուսի անդամ 1933-ից: Ծնվել է այգեգործի ընտանիքում: Ծնողները զոհվել են Մեծ եղեռնի օրերին: 1920-ական թթ. սկզբից ապաստանել է Լիբանանի Ջունիա քաղաքի հայկ. որբանոցում, որտեղ և կրթություն է ստացել: 1925-ին տեղափոխվել է Ֆրանսիա: 1932-ին Ա. *Սեմայի* հետ լույս է ընծայել «Ջանք» գրական-գեղարվեստական հանդեսը:


Մ. Գ. Մանուշյան

1933-ին դարձել է ՀՕԿ-ի, ապա՝ նրա կենտրոնական վարչության անդամ: Լայն գործունեություն է ծավալել ֆրանսահայությանը Սովետական Հայաստանի նվաճումներին ծանոթացնելու, գաղթավայրը մայր հայրենիքի հետ կապելու ասպարեզում: 1935—37-ին խմբագրել է «Զանգու» շաբաթաթերթը, որի էջերում պաշտպանել է բանվոր դասակարգի շահերը, ՍՍՀՄ արտաքին քաղաքականությունը, պայքարել իմպերիալիզմի ու պատերազմի ուժերի դեմ: Երկրորդ համաշխարհային պատերազմի (1939—45) ժամանակ մասնակցել է Ֆրանսիայում գերմ. զավթիչների դեմ պայքարին: 1943-ի մարտին նշանակվել է «Ստալինգրադ» ջոկատի հրամանատար, մայիսից՝ Փարիզի ու Փարիզի շրջանի ազատ հրաձիգների և պարտիզանական բոլոր ինտերնացիոնալ ջոկատների հրամանատար: 1943-ի նոյեմբ. 16-ին ձերբակալվել է և երեք ամիս անց գնդակահարվել իր 22 մարտական ընկերների հետ:

1930-ական թթ. սկզբներից Մ-ի բանաստեղծությունները տպագրվել են սփյուռքահայ, մասնավորապես՝ ֆրանսահայ մամուլում: Վաղ շրջանի ստեղծագործություններում իշխել են անձնական հույզերն ու ապրումները: Այնուհետև երգել է աշխատավոր մարդու ցավն ու դասակարգային մաքառումները, ներբողել մայր հայրենիքը, հայ ժողովրդի վերածնունդը: 1946-ին (հետմահու) Փարիզում լույս է տեսել նրա բանաստեղծությունների ժողովածուն, որը վերահրատարակվել է Երևանում՝ «Իմ երգը» (1956) խորագրով: Պարգևատրվել է ֆրանս. «Պատվո լեգեոն» շքանշանով (հետմահու):

Մ-ի խմբի անունով փողոցներ կան Փարիզում, Մարսելում, Մ-ի անունով փողոց-

ներ՝ Առնուվիլ Լե Գոնեսում, Գառդանում, Բանյոյում (Ֆրանսիա), դպրոցներ՝ Երևանում, Լենինականում: *Շ. Տատուրյան*

**ՄԱՆՈՒՉԱՐ** Մելիք-Շահնազարյանց (ծն. և մահ. թթ. անհտ.), Գեղարքունիքի մելիք 1730—40-ական թթ.: Հաջորդել է հորը՝ *Մելիքջան* Մելիք-Շահնազարյանցին: Վայելել է Նադիր շահի վստահությունը, իր զորքերով մասնակցել Հնդկաստան կատարած նրա արշավանքներին: Արարատյան երկրի (Չուխուր-Սա՛դ) բեկլարբեկը, վախենալով Մ-ի աճող հեղինակությունից, նրան հրավիրել է Երևան և դավադրաբար սպանել:

*Գրկ.* Լ և ո, Երկ. ժող., հ. 3, գիրք 2, Ե., 1973: *Հ. Փափազյան*

**ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆ** Ալեքսանդր Բագրատի [25.9.1908, Գանձակ (այժմ՝ Կիրովաբադ)—10.11.1979, Երևան], հայ սովետական անասնաբույծ-սելեկցիոներ: Գյուղատնտ. գիտ. դ-ր (1958), պրոֆեսոր (1963): Ավարտել է Երևանի անասնաբուծական-անասնաբուժական ինստ-ը (1933), 1956—59-ին աշխատել է Ադրբեջանի անասնապահության ԳՀԻ-ում: 1959—1965-ին եղել է ՀՍՍՀ գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման ԳՀԻ-ի դիրեկտորի տեղակալ՝ գիտության գծով, 1965—75-ին՝ Երևանի անասնաբուծական-անասնաբուժական ինստ-ի գյուղատնտ. արտադրության էկոնոմիկայի և կազմակերպման ամբիոնի վարիչ: Մ. ապացուցել է, որ տեղական տավարի, շվիցի և զեբուի խառնածինների և հիբրիդների նպատակադիր ընտրությամբ ու զույգ ընտրությամբ «իր մեջ» բուծումից ստացված սերունդը համատեղում է մսատվության, կաթնատվության և կաթի բարձր յուղայնության հատկություններ: Դրա հիման վրա Ադրբ. ՍՍՀ-ում ստեղծվեց *կովկասյան գորշ տավարի ցեղը*, որի հեղինակներից է նաև Մ.:

*Երկ.* Внутрихозяйственное планирование производства и реализации продуктов животноводства, Е., 1970; Вопросы экономики и организации горного скотоводства, Е., 1972. *Վ. Աբրահամյան*

**ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆ** Արամ Վահանի (3.5.1893, Իգդիր —1937), կուսակցական և պետական աշխատող: Հայաստանում սովետական կարգերի համար մղված պայքարի մասնակից: ՍՄԿԿ անդամ 1917-ից: Սկզբնական կրթությունն ստացել է Իգդիրի քաղաքային դպրոցում: 1914-ին ուսման նպատակով մեկնել է Ռումինիա: Առաջին համաշխարհային պատերազմի (1914—18) տարիներին հեղափոխական գործունեություն է տարել ռուս. բանակում, մասնավորապես հայ զինվորների մեջ: 1918-ին վերադարձել է Հայաստան, պրոպագանդիստական ու կազմակերպչական աշխատանք տարել տարբեր վայրերում: 1920-ին ընտրվել է ՌՍԴԲ(բ)Կ Երևանի կոմիտեի անդամ, մասնակցել է Մայիսյան ապստամբությանը, որի պարտությունից հետո ձերբակալվել է: Բանտում եղել է կուսակցական ընդհատակյա բջջի անդամ: Հայաստանում սովետական կարգերի հաստատվելուց հետո աշխատել է առողջապահության, հողագործության, կապի բնագավառներում և Հայկոմկուսի Կենտկոմի ապարատում: 1936—37-ին Մ.



Ա. Վ. Մանուչարյան



Մ. Ծ. Մանուչարյան

Անդրֆեդերացիայի կապի ժողկոմատի հայկ. գրասենյակի լիազորն էր:

*Երկ.* Հուշեր և փաստեր ընդհատակյա կյանքից, Ե., 1933:

**ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆ** Լևոն Նիկոլայի (7.8.1890, Թիֆլիս —11.7.1974, Երևան), գեոդեզիստ: Տեխնիկական գիտ. դ-ր (1961), պրոֆեսոր (1939), ՀՍՍՀ գիտ. և տեխ. վաստ. գործիչ (1960): 1916-ին ավարտել է Մոսկվայի գեոդեզիական ինստ-ը: Աշխատել է ՀՍՍՀ հողժողկոմատի հողաշինարարական վարչությունում, ղեկավարել հանրապետության տարածքի խոշոր մասշտաբի տեղագրական հանույթի աշխատանքները: 1930—68-ին ղեկավարել է Երևանի պոլիտեխնիկական ինստ-ի գեոդեզիայի ամբիոնը: 1968-ից՝ պրոֆեսոր-կոնսուլտանտ: Հեղինակ է «Գեոդեզիա» (1933) բուհական ուս. ձեռնարկի: Պարգևատրվել է Կարմիր դրոշի շքանշանով:

**ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆ** (Մանուչարով) Հովհաննես Ասլանի (1863, Թիֆլիս —1909), հայ նարոդնիկ: Գրիգոր *Մանուչարյանցի* տոհմից: Սովորել է Թիֆլիսի և Քութայիսի գիմնազիաներում, 1882-ին ընդունվել Պետերբուրգի համալսարանի մաթեմատիկական ֆակուլտետը: Ուսանողական շարժումներին մասնակցելու համար 1883-ին հեռացվել է համալսարանից: Նույն թվականին «Նարոդնայա վոլյա» նարոդնիկական կազմակերպության անդամների հետ հեղափոխական աշխատանք է ծավալել Խարկովում (հիմնել են ընդհատակյա տպարան, տպագրել և տարածել հեղափոխական գրականություն): 1885-ին դատապարտվել է կախաղանի: Բայց դատավճիռը փոխարինվել է 10 տարվա բանտարկությամբ, և Մ. նետվել է Շլիսելբուրգի ամրոցը: Բանտում շարունակել է հեղափոխական աշխատանքը, սերտ կապ պահպանել նարոդովոլեցներ Ն. Ա. *Մորոզովի* և Վ. Ն. Ֆիգների հետ: Ազատազրկման ժամկետը լրանալուց (1895) հետո Մ. հրաժարվել է հեռանալ Շլիսելբուրգից, քանի դեռ այնտեղ էին իր հեղափոխական ընկերները: Ցարական ոստիկանությունը Մ-ին աքսորել է Սախալին: Մ-ի անձնական բախտով հետաքրքրվել և փորձել է նրան օգնել գրող Ա. Պ. Չեխովը: Աքսորում Մ. գրել է «Իմ դատավարությունը» [«Բիլոյե» («Былое»), 1906, № 7], «Շլիսելբուրգից դեպի Սախալին» [«Բիլոյե» («Былое»), 1907, № 6] հուշագրությունները: Թաղվել է Բլագովեշչենսկ քաղաքում:

*Գրկ.* Калантар Е., Человек с «Маяка», Е., 1968. *Վ. Պարսամյան*

**ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆ** (Մանուչարով) Միքայել Ծատուրի [1885, գ. Արծվանիկ (այժմ՝ ՀՍՍՀ Ղափանի շրջանում)—1963, Բաքու], բանվոր-հեղափոխական: ՍՄԿԿ անդամ 1906-ից: Հեղափոխական գործունեությունն սկսել է Բաքվի նավթարդյունաբերողների մեխանիկական արհեստանոցներում: 1909-ին ձերբակալվել է և 4 տարով աքսորվել Ղափանի պղնձահանքերը: 1914—19-ին գործուն մասնակցություն է ցուցաբերել Բաքվի պրոլետարիատի հեղափոխական շարժմանը: Եղել է Ս. Շահումյանի կազմակերպած մարտական դրուժինայի շարքերում, ընտրվել բանվորների և զինվորների Բաքվի խորհրդի անդամ: Նշանակվել է Բաքվի կոմունայի արտակարգ հանձնաժողովի օպերատիվ մասի պետ: Կոմունայի պարտությունից հետո տեղափոխվել է Աստրախան: Աշխատել է 11-րդ և 12-րդ կարմիր բանակների հատուկ բաժիններում: 1919-ին ընդգրկվել է Կամոյի մարտական ջոկատի կազմում:

Անդրկովկասում սովետական կարգեր հաստատվելուց հետո՝ 1921—25-ին, տնտ. աշխատանք է կատարել Բաքվում: 1925-ին տեղափոխվել է Հայաստան, նշանակվել Ղափանի պղնձաձուլական գործարանի և հանքերի շահագործման դիրեկտորի տեղակալ (1925—28): 1928—36-ին վերստին աշխատել է Բաքվում՝ եղել է ԱԿ(բ)Կ Կենտկոմի, ԱՍՍՀ Կենտգործկոմի, ԱԿ(բ)Կ և ԱՍՖՍՀ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովների անդամ: *Լ. Առաքելյան*

**ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆ** Նինա Նիկողայոսի [5(17).2.1885, Թիֆլիս —3.9.1972, Երևան], հայ սովետական դերասանուհի: ՀՍՍՀ ժող. արտիստուհի (1949): Բեմ է բարձրացել 1909-ին, Թիֆլիսում, հիմնականում հանդես եկել Զուբալովի անվ. ժողտանը: Ա. Խարազյանի և Հ. Զարիֆյանի թատերախմբերի հետ ելույթներ է ունեցել Անդրկովկասի մի շարք քաղաքներում: 1920-ից հաստատվել է Երևանում: 1920-ական թթ. խաղացել է Երևանի (Առաջին պետ. և Հեղափոխության), Լենինականի, Դիլիջանի թատրոններում: 1929—



Ն. Ն. Մանուչարյանը Նաթելի դերում (կադր «Պեպո» կինոնկարից, 1935)

1957-ին աշխատել է Երևանի պատանի հանդիսատեսի թատրոնում, եղել նրա հիմնադիրներից:

Հիմնականում խաղացել է խիստ բնութագրական և կատակերգական դերեր: Լավագույններից են՝ Սալոմե, Քալի, Եփեմիա (Սունդուկյանի «Էլի մեկ զոհ», «Քանդած օջախ», «Պեպո»), Սուսան, Սուսամբար (Շիրվանզադեի «Նամուս»), Դեղի

(«Գիքոր», ըստ Թումանյանի), Պրոստակովա (Ֆոնվիզինի «Տհասը»), Տրուդվուդ (Չ. Դիքենսի «Դավիթ Կոպերֆիլդ»): 1925—35-ին նկարահանվել է կինոյում: Դերերից են՝ Շպպանիկ («Նամուս»), Ջառնիշան («Չար ոգի»), Եղսան («Ղուլը»), Նաթել («Պեպո»):

*Գրկ.* Դ գ ն ու ն ի Դ., Նինա Մանուչարյան, Ե., 1960: *Բ. Հովակիմյան*

**ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆՑ** Գրիգոր [1773, գ. Հախում (այժմ՝ ՀՍՍՀ Շամշադինի շրջանում)—1846, գ. Հախում], հայ ազատագրական շարժման գործիչ, արքեպիսկոպոս: Կրթությունն ստացել է Նոր Վարագա վանքի վարժարանում: Հայ ժողովրդի ազատագրումը կապելով Ռուսաստանի օգնության հետ՝ առաջին ռուս-պարսկական պատերազմի (1804—13) ժամանակ Ղազախի և Շամշադինի հայ երիտասարդներից կազմել է 500 հոգուց բաղկացած հեծյալ ջոկատ և մասնակցել ռազմ. գործողություններին: Մ-ի ջոկատը աչքի է ընկել ռուս. զորքերի երևանյան առաջին (1804), երկրորդ (1808) արշավանքներում և հատկապես Նախիջևանի գրավման (1808-ի նոյեմբեր) ժամանակ, որոնց համար պարգևատրվել է Ս. Գեորգի IV աստիճանի, Ս. Վլադիմիրի և Ս. Աննայի շքանշաններով: Երկրորդ ռուս-պարսկական պատերազմում (1826—28) Մ-ի ջոկատը պաշտպանել է Լոռի—Փամբակի, Դիլիջանի և Ղազախ—Շամշադինի բնակչությանը, ճնշել Բորչալուի խաների ու աղալարների հրահրած խռովությունը, պաշտպանել ռազմաստրատեգիական նշանակություն ունեցող ճանապարհները, ապահովել ռուս. բանակին պարենի և զինամթերքի մատակարարումը ևն: 1826-ի ամռանը Մ-ի ջոկատը հաղթական կռիվներ է մղել Զուրաբ խանի և Պարսկաստանի կողմն անցած վրաց արքայորդի Ալեքսանդրի զորքերի դեմ: Մասնակցել է նաև Երևանի խանի զորքերի դեմ մարտերին և Երևանի գրավմանը: Մ-ի նախաձեռնությամբ և ջանքերով Շամշադինի գյուղացիները ազատվել են խանաբեկական կախումից և ճանաչվել պետ. գյուղացիներ: Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացվելուց հետո Մ. վերադարձել է հայրենի գյուղ: Ղեկավարել է Նոր Վարագա վանքի վերանորոգման աշխատանքները, բացել ծխական դպրոց:

*Գրկ.* Ե ր ի ց յ ա ն Ա., Ամենայն հայոց կաթողիկոսությունը և Կովկասի հայք XIX դարում, մաս 1, Թ., 1894: Գ և ղ ա մ յ ա ն Ե., Պատմական քաղվածներ, պր. 3, Բաքու, 1909: Գ ր ի գ ո ր յ ա ն Ա., Գրիգոր Մանուչարյանցի պարտիզանական ջոկատը, Ե., 1978: *Վ. Պարսամյան, Գ. Սարգսյան*

**ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆՑ** Շուշանիկ Մկրտչի (1889, Ստավրոպոլ—1969, Մոսկվա), սովետական կուսակցական աշխատող: ՍՄԿԿ անդամ 1918-ից: Ավարտել է Պետերբուրգի կանանց բարձրագույն (Բեստուժևյան) դասընթացները: 1917-ին ղեկավարել է հեղափոխական Պետրոգրադի հեռագրական գործակալության գրական բյուրոն: 1918-ին աշխատել է Համառուսաստանյան Կենտգործկոմի հրատարակչությունում, այնուհետև՝ Պետհրատում: 1920—24-ին եղել է Վ. Ի. Լենինի, իսկ այնուհետև, մինչև 1930-ը, Ն. Կ. Կրուպսկայայի գրադարանավարը: 1930—35-ին

Շ. Մ. Մանուչարյանց

Ա. Ա. Մանուչարով

աշխատել է ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստ-ում, որպես ավագ գիտաշխատող: Պարբերական մամուլում բազմիցս հանդես է եկել Վ. Ի. Լենինին նվիրված հուշերով: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

*Լ. Առաքելյան*

**ՄԱՆՈՒՉԱՐՈՎ** Անդրեյ Արսենի (ծն. 7.6.1917, Խարկով), ավիացիայի հայ սովետական գեներալ-մայոր, ՍՍՀՄ վաստ. փորձարկող օդաչու (1967): ՍՄԿԿ անդամ 1941-ից: Ավարտել է Մոսկվայի Չկալովի անվ. աերոակումբը, Մոսկվայի ավիացիոն ինստ-ը (1940): Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին (1941—45): Փորձարկել է գլխավոր կոնստրուկտորներ Ա. Ս. Յակովլևի, Ա. Ի. Միկոյանի, Պ. Օ. Սուխոյի, Ա. Ն. Տուպոլևի, Ս. Վ. Իլյուշինի ստեղծած ինքնաթիռները: Թռիչքներ է կատարել 106 տիպի ինքնաթիռներով: Լենինյան (1967) և պետական (1975) մրցանակների դափնեկիր է: Պարգևատրվել է Լենինի, Հայրենական մեծ պատերազմի I աստիճանի, Կարմիր դրոշի, Կարմիր աստղի 4 շքանշաններով:

**ՄԱՆՈՒՉԵ** (ծն. թ. անհտ.—1110), ամիրա *Շադդադյանների* տոհմից, Դվինի Աբուլ-Ասվար ամիրայի որդին: Մ-ի կինը Բագրատունի Աշոտ Դ-ի դուստրն էր: Մ-ի պապը՝ Գանձակի Փատլուն ամիրան (1072—75), 1072-ին գնեց Անին՝ սելջուկների Ալփ-Արսլան սուլթանից և հանձնեց մանկահասակ Մ-ին, որը իշխեց Անի-Շիրակում՝ մինչև 1110-ը: Ստանալով Անին կիսավեր վիճակում՝ Մ. վերակառուցեց քաղաքը և նրա պարիսպները: Հայերի նկատմամբ վարել է համեմատաբար մեղմ և բարյացակամ քաղաքականություն: 1081-ին Մ-ի և Կյուրիկե Ա-ի օժանդակությամբ Շիրակի եպիսկոպոս Բարսեղը օծվել է Հայոց կաթողիկոս՝ Անի նստավայրով: Մ-ի օրոք Պահլավունյաց տոհմի ներկայացուցիչները (որոնք Բագրատունիների օրոք բարձր պաշտոններ ունեին հայոց արքունիքում) վերահաստատվեցին Անիում:

*Ռ. Մաթևոսյան*

**ՄԱՆՈՒՉԵԻ ՄԶԿԻԹ**, միջնադարյան ճարտարապետական հուշարձան *Անի* քաղաքի հարավային մասում, Ախուրյան գետի ձորեզերքին: Կառուցվել է Բագրատունյաց օրոք՝ X—XI դդ., որպես քաղաքային մաքսատան կամ պահակատան շենք: Անիի նոր տերերը՝ *Շադդադյանները*, 1072-ին շենքի հս. անկյունի հին աշտարակի տեղում կառուցել են ութանիստ, ներսից պտուտակաձև աստիճաններով մինարե ու, նորոգելով շենքի վերին հարկը, այն հարմարեցրել մզկիթի: Վերին հարկը ընդարձակ (28 *մ*×33 *մ*) դահլիճ է, ուր երկու շարքով դասավորված սյուները (երեքական յուրաքանչյուրում) ներքին տարածությունը բաժանում են երեք երկայնական մասերի: Դահլիճն առատ լուսավորված է դեպի Ախուրյանի ձորը բացվող չորս պատուհաններով, ինչպես և ծածկի երդիկներով: Վերին և ներքևի հարկերը, ինչպես և Անիի Պարոնի պալատում, կապված են միջհարկային թաղածածկի մեջ թողնված անցքի միջոցով, ուր դրված էր սանդուղքը:

Մանուչեի մզկիթը (X—XI դդ.)

*Գրկ.* Հ ա ր ու թ յ ու ն յ ա ն Վ., Անի քաղաքը, Ե., 1964, էջ 79—80: О р б е л и И., Краткий путеводитель по городищу Ани, СПБ, 1910, с. 5—7. *Վ. Հարությունյան*

**ՄԱՆՈՒՖԱԿՏՈՒՐԱ** (ուշ լատ. manufactura, < լատ. manus — ձեռք և factura — պատրաստում), կապիտալիստական արդյունաբերության զարգացման փուլ, որը հաջորդել է *կապիտալիստական պարզ կոոպերացիային*, նախորդել խոշոր *մեքենայական արտադրությանը*. աշխատանքի բաժանման և ձեռքի արհեստագործական տեխնիկայի վրա հիմնված կապիտալիստական ձեռնարկություն: Ծագել է XVI դ. կեսերին Արևմտյան Եվրոպայում և մինչև XVIII դ. վերջին երեսնամյակը եղել է արտադրության կազմակերպման իշխող ձևը: Առաջացել է երկու ուղիով. 1. կապիտալիստը մի ընդհանուր արհեստանոցում միավորել է միևնույն մասնագիտության տեր մի քանի արհեստավորների, որոնցից յուրաքանչյուրը կատարել է միևնույն առանձին օպերացիան (հետերոգեն Մ.), 2. կապիտալիստը մի արհեստանոցում միավորել է տարբեր մասնագիտության տեր առանձին, ինքնուրույն արհեստավորների, որոնք սկզբից մինչև վերջ մասնակցել են արտադրանքի պատրաստմանը (օրգանական Մ.): Մանուֆակտուրային արտադրության զարգացմանը համապատասխանել է Մ-ի 3 ձև. ց ր վ ա ծ Մ. (երբ ձեռնարկատերը գնում ու վաճառում էր ինքնուրույն արհեստավորների արտադրանքը), խ ա ռ ը Մ. (երբ արհեստանոցում առանձին օպերացիաների կատարումը զուգակցվում էր տանը կատարվող աշխատանքի հետ): Առավել զարգացած ձևը կ ե ն տ ր ո ն ա ց վ ա ծ Մ. է (երբ վարձու բանվորները միավորվում էին մի արհեստանոցում):

Մ. էապես նպաստել է կապիտալիզմի զարգացմանը: Արտադրության պրոցեսի

մանմատումը պարզագույն գործողությունների, հմուտ բանվորների պատրաստումը, աշխատանքի գործիքների մասնագիտացումն ու կատարելագործումը պայմաններ ստեղծեցին մեքենաների կիրառման համար, բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, արտադրության միջոցները կենտրոնացան կապիտալիստների ձեռքում, առաջացան արդյունաբերության նոր ճյուղեր, ընդլայնվեց ներքին շուկան ևն: Մյուս կողմից, չնայած աշխատուժն արդեն վերածվել էր ապրանքի, բայց մանուֆակտուրային բանվորների ամբողջությունը դեռևս հասարակական դասակարգ՝ պրոլետարիատ, չէր դարձել: Բանվորները պահպանում էին կապը տնայնագործական արտադրության ու հողի հետ, նրանց կազմը սոցիալապես միասեռ չէր: Եվ քանի որ Մ-ի բազան արհեստավորական տեխնիկան ու ձեռքի աշխատանքն էր, ուստի այն վճռական առավելություններ չուներ մանր արտադրության նկատմամբ: «Դրա հետ միասին մանուֆակտուրան ի վիճակի չէր ո՛չ ընդգրրկելու հասարակական արտադրությունը նրա ամբողջ ծավալով, ո՛չ էլ այն հեղաշրջելու բուն հիմքից... Նրա սեփական տեխնիկական նեղ բազիսը զարգացման մի որոշ աստիճանում հակասության մեջ մտավ արտադրության հենց իր ստեղծած պահանջների հետ» (Մ ա ր ք ս Կ., Կապիտալ, հ. 1, էջ 389), և հասունացավ մեքենայական արտադրությանն անցնելու անհրաժեշտությունը (տես *Արդյունաբերական հեղաշրջում*):

Ռուսաստանում Մ-ներն առաջացել են XVII դ. երկրորդ կեսին, լայն տարածում ստացել XVIII դ.— XIX դ. 1-ին կեսին: Դրանց առանձնահատկություններն էին՝ ձևավորումը ֆեոդալական-ճորտատիրական հարաբերությունների տիրապետության պայմաններում, սերտ կապը գյուղացիական արտադրության հետ, սկզբբում բազմաթիվ Մ-ների (պետ., մասնավոր, պոսեսիոն, կոտչինային) գոյությունը, որոնցում կիրառվում էր ոչ թե վարձու, այլ ճորտային աշխատանքը, հետագայում՝ կապիտալիստական Մ-ների թվի աճը: Ճորտատիրական իրավունքի վերացումից (1861) հետո Մ-ներում հարկադիր աշխատանքի կիրառումն արգելվեց, դըրանց մեծ մասը վերաճեց ֆաբրիկաների, իսկ մնացածները սկսեցին երկրորդական դեր խաղալ:

Ա ր և ե լ յ ա ն Հ ա յ ա ս տ ա ն ու մ XVIII դ. վերջին, XIX դ. սկզբին գործող արդ. ձեռնարկությունները հիշատակվում են որպես «գործարաններ ու ֆաբրիկաներ», բայց դրանք փոքր Մ-ներ էին միայն, կամ, ավելի հաճախ, բնակարաններին կից կառուցված արհեստանոցներ: Երեվանում, Ալեքսանդրապոլում, Նոր Բայազետում, Նախիջևանում, Շուշիում և այլուր կար կաշվի՝ 40, օճառի՝ 10, ներկման՝ 4, օղեգործական՝ 13, բրուտագործական և աղյուսի՝ 11-ական, կրի 9 ձեռնարկություն ևն: Դրանցից յուրաքանչյուրի արտադրության միջին տարեկան ծավալը չէր գերազանցում 700 ռուբլուց, օրավարձը չնչին էր. 1850-ական թթ.՝ 20—25, իսկ 60-ական թթ.՝ 30—50 կոպ.: Արևելյան Հայաստանում մանուֆակտուրային արտադրությունը տիրապետող է դարձել 1860-ական թթ.: Մանուֆակտուրային տիպի ձեռնարկություններ կային աղի, պղնձի, արծաթի, ոսկու, անագի հանքաքարի արդյունահանման ու մշակման գործում՝ Կողբում, Ալավերդիում, Շամլուղում, Ախթալայում, Ագարակում, Հալիձորում ևն: Դրանց արտադրության տեխնիկան խիստ պարզունակ էր, սկզբում կիրառվում էր հարկադիր, հետագայում՝ ազատ վարձու աշխատանք: Առևտրական երկրագործության զարգացման շնորհիվ XIX դ. սկսեց կիրառվել գյուղատնտ. մթերքների տեխ. մշակումը, որի հիման վրա գյուղական Մ-ներ առաջացան գինու և սպիրտի արտադրության, բամբակի և յուղատու բույսերի մշակման գործում: Դարի վերջում դրանք վերաճեցին կապիտալիստական ֆաբրիկաների ու գործարանների:

Ա ր և մ տ յ ա ն Հ ա յ ա ս տ ա ն ու մ և Փոքր Ասիայի հայաշատ քաղաքներում Մ-ների ստեղծման առաջին քայլերը կատարվել են XIX դ. 1-ին քառորդում, իսկ դարի կեսերին մանուֆակտուրային տիպի ձեռնարկություններ կային արդեն մետաղագործության, ջուլհակության, կաշեգործության, մետաքսագործության, գինեգործության և այլ բնագավառներում: Հատկապես հայտնի էին Սվազի, Եվդոկիայի, Ամասիայի, ինչպես և Ուրֆայի արդյունագործական, Ուրֆայի, Դիարբեքիրի, Բրուսայի բամբակագործական և մետաքսագործական, Եվդոկիայի, Երզնկայի պղնձագործական, Վանի արծաթագործական ու ոսկերչական Մ-ները: Դըրանց մի մասը հումքը ստանում էր Եվրոպայից, իսկ պատրաստի արտադրանքը վաճառքի էր հանում անգլ., ֆրանս. շուկաներում: Արհեստանոցներում գործադրվում էր վարձու աշխատանքը, աշխատողների թիվն անընդհատ ավելանում էր, արտադրության տեխնիկան՝ կատարելագործվում: Սակայն Արևմտյան Հայաստանում իշխողը ֆեոդալական հետամնաց արտադրաեղանակն էր: Բացի այդ, բուրժուազիան և պրոլետարիատը որպես դասակարգ դեռևս ձևավորված չէին, իսկ եվրոպական գործարանային ապրանքների մրցակցությունը, կյանքի ու գույքի անապահով պայմանները, թուրք. ֆեոդալական բռնակալական կամայականություններն արգելակում էին մանուֆակտուրային արտադրության զարգացումը:

*Գրկ.* Մ ա ր ք ս Կ., Կապիտալ, հ. 1, Ե., 1954: Լ ե ն ի ն Վ. Ի., Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում, Երկ., հ. 3: Թ ում ա ն յ ա ն Հ. Ե., Հայաստանի տնտեսական զարգացման պատմություն, Ե., 1960: Ա ր ահ ա մ յ ա ն Ա. Գ., Համառոտ ուրվագիծ հայ գաղթավայրերի պատմության, հ. 1—2, Ե., 1964—67: Е г и а з а р о в С., Исследования по истории учреждений в Закавказье, ч. 1—2, Казань, 1889—91. *Մ. Կարապետյան*

**ՄԱՇ** (Vigna sinesis savi), բակլազգիների ընտանիքի միամյա բույս: Արմատն իլիկաձև է, ցողունը՝ կանգուն կամ կիսականգուն՝ 30—150 *սմ* բարձրությամբ, տերևները եռմասնյա են, հերթադիր, ծաղկաբույլը՝ ողկույզ, պտուղը ունդ է՝ դեղին կամ մուգ դեղին: Սերմերը՝ ձվաձև, երիկամաձև, սպիտակ, վարդագույն, շագանակագույն: 1000 սերմի կշիռը 300 *գ* է: Ջերմասեր և խոնավասեր բույս է: Օգտագործվում է որպես պարեն, կեր, ինչպես նաև կանաչ պարարտացման համար: Ունի աֆրիկական ծագում: Մշակվում է ԱՄՆ-ում, Մեքսիկայում, Կուբայում, Հնդկաստանում, Չինաստանում ևն, ՍՍՀՄ-ում՝ Միջին Ասիայում, Մոլդավիայում, Ուկրաինայում, Կրասնոդարի և Ստավրոպոլի երկրամասերում: ՀՍՍՀ-ում մշակվում է Արարատյան դաշտում, Մեղրու, Եղեգնաձորի, Ղափանի շրջաններում:

**ՄԱՇԱԿԱՅՈՒՆՈՒԹՅՈՒՆ**, նյութերի, մեքենաների դետալների և այլ շինվածքների դիմադրությունը շփումից մաշվելու նկատմամբ: Գնահատվում է շահագործման դեպքում կամ ստենդի վրա փորձարկումներ կատարելիս՝ նյութերի կամ շինվածքների մինչև մաշվելը աշխատելու տևողությամբ: Շինվածքների Մ-յան բարձրացմանը նպաստում են դրանց կոնստրուկտիվ կատարելագործումը (Մ-յան կոմպենսացում, դրա հավասարաչափ բաշխում մակերևույթով ևն), դետալների շփումը փոքրացնող պայմանների ստեղծումը (յուղում, քսուքանյութերի հատկությունների բարելավում, հղկանյութային ներգործությունից պաշտպանություն ևն):

**ՄԱՇԵՐՈՎ** Պյոտր Միրոնովիչ [13(26).2. 1918, գ. Շիրկի (այժմ՝ Վիտեբսկի մարզի Սեննենսկի շրջանում) — 4.10.1980, ք. Մինսկ], սովետական պետական և կուսակցական գործիչ, Սովետական Միության հերոս (1944), սոցիալիստական աշխատանքի հերոս (1978): ՍՄԿԿ անդամ 1943-ից: Հայրենական մեծ պատերազմի (1941—45) սկզբից ղեկավարել է ԲՍՍՀ


Պ. Մ. Մաշերով

Ռոսոնի շրջանի կոմերիտական ընդհատակյա կազմակերպությունը, եղել է այդ շրջանի պարտիզանական շարժման ղեկավարներից: 1943—46-ին՝ Բելոռուսիայի ԼԿԵՄ Վիլեյկայի, Մոլոդեչնոյի մարզկոմների առաջին քարտուղար, 1946—54-ին՝ Բելոռուսիայի ԼԿԵՄ ԿԿ քարտուղար, ապա՝ առաջին քարտուղար: 1955—59-ին՝ Բելոռուսիայի կոմկուսի Բրեստի մարզկոմի առաջին քարտուղար, 1959—62-ին՝ Բելոռուսիայի կոմկուսի ԿԿ քարտուղար, 1962—65-ին՝ երկրորդ քարտուղար, 1965-ի մարտից՝ առաջին քարտուղար: ՍՄԿԿ XIX—XXV համագումարների պատգամավոր էր, XXII համագումարում ընտրրվել էր ՍՄԿԿ ԿԿ անդամության թեկնածու, ՍՄԿԿ ԿԿ Հոկտեմբերյան (1964) պլենումում, XXIII—XXV համագումարներում՝ անդամ: 1966-ի ապրիլից ՍՄԿԿ ԿԿ քաղբյուրոյի անդամության թեկնածու էր: ՍՍՀՄ III—V և VII—X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Մ. 1966-ից ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության անդամ է: Պարգևատրվել է Լենինի 7 շքանշաններով:

**ՄԱՇԿ**, կենդանիների և մարդու մարմնի արտաքին ծածկույթ, որը կատարում է շոշափողական, զգացողության, նյութափոխանակության, ջերմակարգավորման, միջավայրի վնասակար ազդեցությունների դեմ պաշտպանական ֆունկցիաներ: Կենդանիների Մ. բաղկացած է արտաքին՝ էպիթելային (էպիդերմիս), և ներքին՝ շարակցահյուսվածքային շերտերից: Է պ ի թ ե լ ա յ ի ն շերտում կան բազմաթիվ միա- կամ բազմաբջիջ գեղձեր: Էպիթելային բջիջների կոշտ արտազատուկը և բջջապլազմայի մի մասի կազմափոխման արգասիքները կարող են առաջացնել կմախքային և պաշտպանական տարրեր (փափկամորթների խեցին, հոդվածոտանիների խիտինային զրահը ևն): Անողնաշարավորների էպիթելը բաղկացած է բջիջների մեկ շերտից, ողնաշարավորներինը բազմաշերտ է, ընդ որում՝ ցամաքային ձևերի արտաքին շերտերն առաջացնում են էպիդերմիսի եղջերացած մասը, եղջերային թեփուկներ, մազեր, փետուրներ, եղունգներ: Շ ա ր ա կ ց ա հ յ ու ս վ ա ծ ք ա յ ի ն շ ե ր տ ն առաջացնում է Մ-ին ամրություն և առաձգականություն հաղորդող կոլագենային և էլաստինային թելերի ցանց (ողնաշարավորներ, գլխոտանի փափկամորթներ), ոսկրային և այլ թեփուկներ (ձկներ), ինչպես նաև զրահի դեր կատարող մաշկային ոսկրացումներ (սողուններ):




Նկ. 1. մ ա ր դ ու վ ե ր ն ա մ ա շ կ ի կ ա ռ ու ց վ ա ծ ք ը. *1*. հիմնային (ծլական կամ մալպիգյան) շերտ, *2*. փշավոր շերտ, *3*. հատիկավոր շերտ, *4*. եղջերային շերտ, *5*. բուն մաշկի ծլիկային շերտի թելիկներ

Նկ. 2. *1*. մազ, *2*. քրտնագեղձերի արտատար բացվածքներ, *3*. կարծր շարակցական հյուսվածքի շերտ, *4*. ճարպագեղձ, *5*. մազը բարձրացնող մկան, *6*. փուխր շարակցական հյուսվածքի շերտ, *7*. մազարմատ, *8*. քրտնագեղձ, *9*. էպիդերմիս, *10*. դերմա, *11*. ճարպային բջիջների խումբ




Հասուն մ ա ր դ ու Մ-ի մակերեսը 1,5—2 *մ*² է, հաստությունը՝ 0,5—4 *մմ*: Մ-ի քաշը ենթամաշկային բջջանքի հետ կազմում է մարմնի կշռի մոտ 16%-ը: Մարդու Մ. կազմված է 3 շերտից. վերնամաշկ՝ էպիդերմիս (նկ. 1), բուն մաշկ (դերմա) և ենթամաշկ: Մ. օժտված է արյան ու ավշային անոթների խիտ ցանցով, նյարդաթելերով ու հատուկ նյարդային ապարատներով, ինչպես նաև քրտնագեղձերով ու ճարպագեղձերով, որոնց քանակը տարբեր հատվածներում միատեսակ չէ (նկ. 2): Բնական անցքերի շրջանում (բերան, քիթ, հետանցք, միզուկի և հեշտոցի արտաքին բացվածքներ) Մ. փոխվում է լորձաթաղանթի: Մ-ի գույնը կախված է գունակների (մելանին, մելանոիդ, կարոտին, օքսիհեմոգլոբին, վերականգնված հեմոգլոբին) քանակից և մի շարք լրացուցիչ գործոններից: Նշված գունակները պահպանում են օրգանիզմը ուլտրամանուշակագույն ճառագայթների ազդեցությունից:

Մ-ի մակերեսն ունի յուրահատուկ գծանկար՝ կազմված եռանկյուն և շեղանկյուն դաշտերից, որոնք սահմանազատված են ակոսիկներով: Ավելի ցայտուն է ափերի և ներբանների, ինչպես նաև մատների ներսի ու դրսի մակերեսների Մ-ի գծանկարը, որը խիստ ուրույն է յուրաքանչյուր մարդու համար և օգտագործվում է անհատներին ճանաչելու նպատակով (մատնադիտում՝ դակտիլոսկոպիա): Էվոլյուցիայի պրոցեսում Մ-ի արտաքին շերտից առաջացել են Մ-ի հավելումները՝ (մազեր, եղունգներ, կաթնագեղձեր, քրտնագեղձեր ու ճարպագեղձեր): Մ-ում գտնվող մեծ քանակությամբ նյարդային զգացող վերջույթներն ապահովում են օրգանիզմի արագ ռեակցիան արտաքին միջավայրի փոփոխվող ազդեցությունների նկատմամբ (տես *Մաշկային զգացողություն*): Մ. կարևոր մասնակցություն ունի ջրաաղային, ածխաջրային, սպիտակուցային, ֆերմենտային ևն փոխանակության պրոցեսներում: Մարդու Մ-ի հիմնական ֆունկցիաներից է ջերմակարգավորումը. ջերմատվության 80%-ը կատարվում է Մ-ով՝ կոնվեկցիայի, ճառագայթման և գոլորշիացման միջոցով: Վերջինս պայմանավորված է Մ-ի արտազատական ֆունկցիայով. իրականանում է գլխավորապես *քրտնարտադրությամբ*: Քրտինքի հետ արտադրվում են փոխանակության որոշ նյութեր, մասնավորապես միզանյութ: Ճարպագեղձերի արտազատուկով՝ Մ-ի ճարպով, օծվում են վերնամաշկն ու մազերը:

*Է. Դանիելյան*

**ՄԱՇԿԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, դ ե ր մ ա տ ո լ ո գ ի ա, գիտություն, որն ուսումնասիրում է *մաշկի* կառուցվածքը, ֆիզիոլոգիական ֆունկցիաները, *մաշկային հիվանդությունների* առաջացման պատճառները, ընթացքը, մշակում ախտորոշման, բուժման և կանխարգելման մեթոդներ: Մ. սերտորեն առնչվում է *վեներոլոգիայի*, վարակիչ ախտաբանության, մանկաբուժության, թերապիայի, ալերգոլոգիայի, էնդոկրինոլոգիայի, վիրաբուժության, գինեկոլոգիայի և մանկաբարձության, նյարդախտաբանության հետ: Մ., հետազոտման կլինիկական եղանակներից բացի, օգտվում է հյուսվածաբանական, հյուսվածաբանա-քիմիական, ֆիզիոլոգիական, իմունակենսաբանական, մանրէակենսաբանական, կենսաքիմիական, փորձառական, էլեկտրոնային միկրոսկոպիայի, էնդոկրինոլոգիական, ֆիզիկական ևն մեթոդներից: Մաշկային երևույթների մանրակրկիտ հետազոտությունը հնարավորություն է տալիս պարզաբանել բժշկ. և ֆիզիոլոգիական մի շարք բարդ պրոբլեմներ. ալերգիան, գերզգայնությունը, օրգանիզմի ռեակտիվությունը, ներքին որոշ օրգանների վիճակը ևն: Մաշկային հիվանդությունները մարդկությանը հայտնի են վաղուց (մ. թ. ա. 3-րդ հազարամյակ): Դրանց բուժման մեթոդների մասին տեղեկություններ կան եգիպտական պապիրուսներում, չինական ձեռագրերում, ռուս. տարեգրություններում: Մաշկային որոշ հիվանդությունների հստակ նկարագրություններ կան Հիպոկրատի (V դ. մ. թ. ա.), Ցելսոսի (I դ. մ. թ. ա.), Գալենի (I դ.), Ավիցեննայի (X—XI դ.) աշխատություններում: Գիտական Մ. ձևավորվել է XVIII դ. վերջին և XIX դ. սկզբին: 1776-ին ավստրիացի բժիշկ Ի. Պլենկը, 1798-ին անգլիացի Ռ. Ուիլենը ստեղծել են մաշկային հիվանդությունների նախնական դասակարգումը՝ հիմնվելով ձևաբանական սկզբունքի վրա: XIX դ. գերմ. գիտնական Ֆ. Հեբրան և Մ. Կապոշին մշակել են մաշկային հիվանդությունների ախտաբանաանատոմիական դասակարգումը (1845): Ֆրանսիացի գիտնականներ Ժ. Ալիբերը, Ա. Բազենը, Ա. Արդին հիմնել են հումորալ տեսությունը և հաստատել դիաթեզի (նախատրամադրվածության) դերը մաշկային հիվանդությունների զարգացման պրոցեսում: XIX դ. հանդես է եկել պատճառագիտական ուղղությունը՝ պայմանավորված բակտերիալոգիայի զարգացմամբ: Ֆրանսիայում Է. Վիդալը հիմնել է փորձառական Մ-յան հիմունքները, XX դ. զարգացել է Մ-յան փորձառական-կլինիկական ուղղությունը: Գերմ. մաշկաբան Յո. Յադասոնը մշակել է մաշկային հիվանդությունների առաջացման մեխանիզմների, մաշկային ռեակցիաների, գերզգայնության, ալերգիայի, իմունիտետի ևն հարցերը: Ռուսաստանում Մ-յան հիմնադիրը Ա. Պոլոտեբնովն է, ըստ որի մաշկային հիվանդությունների առաջացման մեխանիզմների հիմքում ընկած է օրգանիզմի ամբողջականության գաղափարը: Սովետական Մ-յան զարգացմանը նպաստել են նաև Ա. Պոսպելովի, Տ. Պավլովի, Պ. Նիկոլսկու, հայ մաշկաբան-վեներոլոգ Վ. Հարությունովի, Կ. Աստվածատուրովի, Հ. Ղալամքարյանի, Ռ. Բաբայանցի (Մոսկվա), Ա. Հակոբյանի (Տաշքենդ), Մ. Վարդապետովի (Թբիլիսի) և ուրիշների աշխատանքները: Ժամանակակից Մ. հետազոտում է նյարդային, էնդոկրին ևն խանգարումների, ալերգիական և իմունոլոգիական տեղաշարժերի ժամանակ

մաշկի կառուցվածքի և ֆունկցիաների փոփոխությունները, հիմնավորում և ներդնում բուժման նոր մեթոդներ:

Մ-յան պրոբլեմները ուսումնասիրում են մաշկավեներոլոգիական հանրապետական ԳՀԻ-ներում, բժշկ. ուս. հաստատությունների Մ-յան և վեներոլոգիայի ամբիոններում: Մ-յան հարցերը լուսաբանվում են «Վեստնիկ դերմատոլոգիի ի վեներոլոգիի» («Вестник дерматологии и венерологии», 1932-ից) և այլ ամսագրերում: ՀՍՍՀ-ում, 1926-ին Երևանի համալսարանի բժշկական ֆակուլտետում Մ-յան և վեներոլոգիայի դասընթացներ է կազմակերպել Գ. Տեր-Գրիգորյանը: 1930-ին պրոֆեսոր Ն. Հովսեփյանցի նախաձեռնությամբ հիմնվել է մաշկավեներոլոգիայի ԳՀԻ: Մ-յան զարգացմանը և կադրերի պատրաստման մեջ ՀՍՍՀ-ում զգալի ծառայություններ ունեն նաև Ե. Միրաքյանը, Դ. Խուդաղովը, Ռ. Աղասարյանը, Գ. Անդրիասյանը և ուրիշներ: ՀՍՍՀ ազգաբնակչության շրջանում մաշկային ու վեներական հիվանդությունների մասնագիտական բուժման, կանխարգելման միջոցառումներն իրականացվում են դիսպանսերներում ու պոլիկլինիկաների համապատասխան կաբինետներում:

*Գրկ.* Кожевников П. В., Общая дерматология, Л., 1970.

**ՄԱՇԿԱԲՈՐԲ**, դերմատիտ, *մաշկի* ախտահարումը արտաքին միջավայրի գործոնների անմիջական ազդեցության հետևանքով: Ազդակները կարող են լինել մեխանիկական (շփում, ճնշում), ֆիզիկական՝ բարձր ու ցածր ջերմաստիճաններ (տես *Այրվածք*, *Ցրտահարություն*), ուլտրամանուշակագույն և իոնացնող ճառագայթներ, լույս, էլեկտրական հոսանք, քիմ. (թթուներ, հիմքեր, աղեր, պոլիմերներ ևն), կենսաբանական (բույսեր, միջատներ): Որոշ գրգռիչներ (հանքային թթուներ, ուժեղ հիմքեր, աղեր, մարտական թունավոր նյութեր, հրթիռային վառելանյութի բաղադրիչ մասեր) ոչ պայմանական բնույթի են, այսինքն՝ կարող են Մ. առաջացնել յուրաքանչյուր մարդու մոտ: Մյուսները պայմանական են՝ Մ. են առաջացնում միայն մաշկի գերզգայնության առկայությամբ (տես *Ալերգիա*): Հատուկ խումբ են կազմում թունամաշկաբորբերը (տոքսիկոդերմիաներ), որոնք առաջանում են դեղանյութերի (անտիբիոտիկներ, սուլֆանիլամիդային, յոդի, բրոմի պատրաստուկներ, ամինազին ևն), քիմ. նյութերի, սննդանյութերի նկատմամբ օրգանիզմի զգայնության բարձրացումից: Մ-ի կլինիկական պատկերը պայմանավորված է դրանց տեսակով (հասարակ կամ շփումային, ալերգիական կամ էկզեմային ևն) ու ընթացքով (սուր և քրոնիկական): Սուր հասարակ Մ-ի դեպքում հիվանդաբեր գործոնի ազդեցության հատվածում առաջանում են մաշկի վառ կարմրություն, այտուց, երբեմն նաև բշտեր, որոնք ուղեկցվում են այրոցի, ցավի ու քորի զգացումով: Պատճառը վերացնելուց հետո բորբոքային երևույթները մեղմանում են՝ առաջացնելով թեփոտում: Սուր ալերգիական Մ-ի և թունամաշկաբորբերի դեպքում մաշկի ախտահարումը կրում է տարածուն բնույթ և ուղեկցվում ընդհանուր երևույթներով (մարմնի ջերմաստիճանի բարձրացում, քնի խանգարում, դյուրագրգռություն): Գործոնի տևական ազդեցությունից սուր Մ-երը դառնում են քրոնիկական, որոնց դեպքում բորբոքային երևույթները երկարատև են, կայուն, պարբերաբար կրկնություններ տալու և *էկզեմայի* վերածվելու հակումով:

Բուժումը. հակաբորբոքային, օրգանիզմի գերզգայնությունը նվազեցնող կամ վերացնող դեղանյութեր և ֆիզիոթերապևտիկ պրոցեդուրաներ: Կանխարգելումը. անհատական ու զանգվածային մի շարք միջոցառումներ՝ պայմանավորված ազդող գործոնի բնույթով:

*Է. Դանիելյան*

**ՄԱՇԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ**, դերմոգրաֆիա, հիվանդի հետազոտման եղանակ, որի դեպքում բութ ձողիկով կամ «մաշկագրիչ» կոչվող հատուկ գործիքով մաշկը ենթարկվում է մեխանիկական գրգռման: Մ-յամբ պարզում են արյան անոթները նյարդավորող վեգետատիվ նյարդային համակարգի ֆունկցիոնալ վիճակը: Տարբերում են կարմիր, սպիտակ և այտուցային մաշկագրեր: Կարմիր մաշկագիրն առաջանում է մազանոթների լայնացման հետևանքով (գերակշռում է պարասիմպաթիկ նյարդերի տոնուսի բարձրացումը): Երբեմն, անոթների լայնացումից բացի, տեղի է ունենում նաև պլազմայի արտաքիրտում, և մաշկագիրը դառնում է այտուցային: Սպիտակ մաշկագիրն առաջանում է անոթների սեղմման (բնորոշ է սիմպաթիկ նյարդերի տոնուսի բարձրացմանը) հետևանքով: Մաշկագիրը բնականոն է, եթե այն անհետանում է առաջանալուց մի քանի րոպե անց: Տարբեր հիվանդություններին բնորոշ է ախտաբանական որոշակի մաշկագիր. էկզեմայինը կարմիր է, նեյրոդերմիտինը՝ սպիտակ: Մաշկագրի բացակայությունը վկայում է ողնուղեղի կամ ծայրամասային նյարդերի վնասումը:

*Է. Դանիելյան*

**ՄԱՇԿԱԹԵՎԵՐ**, տես *Ականջմտուկներ*:

**ՄԱՇԿԱՅԻՆ ԶԳԱՅՈՂՈՒԹՅՈՒՆ**, արտաքին գրգռիչների ազդեցությունն ընկալելու *մաշկի* ընդունակություն: Պայմանավորված է մաշկային ընդունիչների պատասխան ռեակցիայով: Տարբերում են շոշափման (հպման, ճնշման), ջերմային, ցրտի և ցավային Մ. զ.: Հպման ընդունիչներ են Մայսների և Մերկելի, ճնշմանը՝ Գոլջի-Մացոնիի, Ֆատեր-Պաչինիի, ջերմայինը՝ Ռուֆինի մարմնիկները, ցրտայինը՝ Կրաուզեի ծայրային (վերջնային) զավաթիկները: Երկարատև գրգռումից ընդունիչների (բացառությամբ ցավայինի) զգայնությունը նվազում է, տեղի է ունենում ադապտացիա (հարմարում): Մ. զ. իրականացվում է սոմատոտոպիկ սկզբունքով, այսինքն՝ մաշկի որոշակի հատվածի գրգռմանը պատասխանում է ուղեղի համապատասխան բաժինը, որն օրգանիզմին հնարավորություն է տալիս որոշել գրգռի տեղակայումը: Ախտաբանական երևույթների և որոշ դեղանյութերի ազդեցության դեպքում Մ. զ. կարող է նվազել (հիպոէսթեզիա՝ թերզգայնություն), ավելանալ (հիպերէսթեզիա՝ գերզգայնություն) կամ վերանալ (անզգայնություն): Մ. զ-յան կենտրոնական կարգավորման առանձին հարցեր հետազոտվում են նաև ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Լ. Օրբելու անվ. ֆիզիոլոգիայի ինստ-ում:

*Ա. Ռսկանյան*

**ՄԱՇԿԱՅԻՆ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, մաշկախտեր, մարդու և կենդանիների հիվանդությունների խումբ, որոնք բնորոշվում են *մաշկի*, դրա հավելումների (եղունգներ, մազեր) և տեսանելի լորձաթաղանթների ախտաբանական փոփոխություններով: Առաջացման պատճառները կարող են լինել արտաքին և ներքին: Արտաքինը պայմանավորված է մեխանիկական (վնասվածքներ, ճնշում, քերծում), ֆիզիկական (արևային ու ռադիոակտիվ ճառագայթներ, բարձր ու ցածր ջերմաստիճան), քիմ. (թթուներ, հիմքեր, պոլիմերներ ևն), կենսաբանական (բույսերի հյութեր, միջատներ, մանրէներ) գործոնների ազդեցությամբ: Ներքինը՝ վարակիչ հիվանդությունների, թունավորումների, ներքին օրգանների ու ներզատիչ գեղձերի հիվանդությունների, նյութափոխանակության և արյան շրջանառության խանգարումների հետևանքով: Առանձին և շատ տարածված խումբ են կազմում մաշկի ալերգիական հիվանդությունները, որոնք առաջանում են քիմ. որոշ նյութերի, սննդանյութերի, պոլիմերների, բույսերի ծաղկափոշու ազդեցությունից: Մ. հ-ի առաջացման մեխանիզմում էական նշանակություն ունեն նյարդային համակարգի ֆունկցիոնալ խանգարումները: Մ. հ. բաժանվում են մի քանի խմբերի. թարախաբշտային (տես *Թարախամաշկություն*), պարազիտային կամ մակաբուծական (քոս, ոջլոտություն, դեմոդիկոզ), վիրուսային (հերպեսներ, գորտնուկներ, հպավարակիչ մոլյուսկ), տուբերկուլոզային, ժառանգական, անհայտ ծագումով, *մաշկաբորբեր*, *էկզեմաներ*, նեյրոմաշկախտեր, բշտային մաշկախտեր ևն: Մ. հ. կարող են դրսևորվել բծերով, բշտիկացանով, թարախաբշտիկացանով, հանգույցներով, թեփոտումով, քերծվածքներով, ճաքերով, խոցերով ևն: Որոշ Մ. հ. ընթանում են քորով, այրոցով, ցավերով:

Մ. հ-ի արդյունավետ բուժման նպատակով ՍՍՀՄ-ում ստեղծվել է հիվանդների դիսպանսերային սպասարկում: Բուժման և կանխարգելման միջոցառումները պայմանավորված են Մ. հ. առաջացնող պատճառների բնույթով: Մ. հ. ուսումնասիրում է *մաշկաբանությունը*:

*Է. Դանիելյան*

**ՄԱՇԿԵՎՈՐ**, Մաշկավոր, վանք, գրչության նշանավոր կենտրոն Կիլիկյան Հայաստանի Ճկեր գավառում (Մարաշից ոչ հեռու): Կառուցել է Թորոս Ա Ռուբինյան իշխանը XII դ. սկզբին: 1130-ին Մ-ում ավարտվել է մի Ճառընտիր, որի գրիչը նույնացվում է «Վայ ողբոց» նշանավոր ստեղծագործության հեղինակ Գրիգոր Մաշկևորի հետ (որոշ ուսումնասիրողներ այս անվան հետ են կապում վանքի անունը): XII դ. վերջերի հայտնի գրիչ և ծաղկող Վարդանից մեզ է հասել մի Ավետարան (1187) և մի Ճաշոց (1192)՝ զարդարված լուսանցազարդերով և զարդագրերով:

XIII դարից հայտնի է հինգ ձեռագիր (գրված 1259, 1265, 1268, 1274 և 1298-ին),

իսկ XIV դարից՝ երեք (գրված 1301, 1322 և 1335-ին): Նույն շրջանում (XIV դ.) Բարսեղ Մաշկևորցին կատարել է Մարկոսի Ավետարանի մեկնությունը: Մ-ում են գործել նշանավոր գրիչներ Դավիթ վանահայրը (XII դ.), Կիրակոսը, Առաքել Հնազանդեցին (կազմարար), Բարսեղ արքեպիսկոպոսը (բոլորն էլ՝ XIII դ.), Հովհաննեսը, Ներսես Քահանան (XIV դ.) և ուրիշներ: Մ. XIV դ. եպիսկոպոսանիստ վանք էր: Վանքից մեզ հասած ձեռագրերը պահվում են Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանում, Վենետիկում, Նոր Ջուղայում:

*Գրկ.* Ալիշան Ղ., Սիսուան, Վնտ., 1885: Ոսկյան Հ., Կիլիկիայի վանքերը, Վնն., 1957: *Թ. Հակոբյան, Ա. Մաթևոսյան*

**ՄԱՇԿԵՐՏ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Խարբերդի վիլայեթի Արաբկիրի գավառում: 1914-ին ուներ 532 հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Գյուղում կար եկեղեցի (Ս. Աստվածածին) և վարժարան՝ 40 աշակերտով: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ:

**ՄԱՇԿԻ ՍՆԿԻԿԱՅԻՆ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, մաշկի սնկազգություններ, դերմատոմիկոզներ, *մաշկային հիվանդություններ*, որոնք առաջանում են մակաբույծ *սնկերով* (դերմատոմիցետներ) ախտահարվելիս: Վարակի աղբյուրը հիվանդ մարդն է կամ կենդանին: Վարակվում են հիվանդի հետ անմիջական շփման, սնկիկներով վարակված զանազան առարկաների, ինչպես նաև բանջարեղենի միջոցով: Վարակի հանդեպ առավել զգայուն են երեխաները:

Մ. ս. հ. բաժանվում են չորս խմբի. կերատոմիկոզներ (եղջերասընկազգություն), ախտահարվում է վերնամաշկի միայն եղջերային շերտը, առանց բուն մաշկում բորբոքային երևույթների առաջացման, ունեն թույլ հպավարակելիություն: Այդ խմբից է գունափոփոխ կամ թեփատու որքինը: էպիդերմոմիկոզներ կամ դերմատոֆիտիաներ, որոնց ժամանակ սնկերը տեղադրվում են վերնամաշկի հաստության մեջ: Դրանցից երեքով (աճուկային էպիդերմոֆիտիա, ոտնաթաթի էպիդերմոֆիտիա, ռուբրոմիկոզ) վարակվում են հիմնականում հասարակական բաղնիքներում, լողավազաններում ու սպորտհրապարակներում: Խմորասնկային մակերեսային ախտահարումները (կանդիդամիկոզ) առաջանում են անտիբիոտիկների ոչ արդյունավետ օգտագործումից և ածխաջրային փոխանակության խանգարումից (*շաքարային հիվանդություն*): Մաշկից բացի ախտահարվում են նաև եղունգների թերթիկները, լորձաթաղանթները, ներքին օրգանները:

Տրիխոմիկոզների դեպքում (մակերեսային տրիխոֆիտիա կամ մակերեսային մաշկասնկազգություն, ինֆիլտրատիվ-թարախակալվող տրիխոֆիտիա, զոնջ) վարակի աղբյուր են հիվանդ մարդը և որոշ կենդանիներ: Մեծ մասամբ ախտահարումն ընդգրկում է նաև մազերն ու եղունգները: Խորը սնկային հիվանդությունների (*ակտինոմիկոզ*, խոր բլաստոմիկոզ, սպորոտրիխոզ ևն) հարուցիչները ներթափանցում են ենթամաշկ, մկանները, ոսկրերը, ավշային հանգույցները, ներքին օրգանները և առաջացնում ծանր ախտահարումներ:

Բուժումը. կախված է հիվանդության տեսակից, ախտահարման տարածվածությունից ու տեղակայումից: ՍՍՀՄ-ում, անցկացվող կանխարգելիչ միջացառումների շնորհիվ, Մ. ս. հ. զգալիորեն պակասել են:

**ՄԱՇՀԱԴ**, քաղաք Իրանի հյուսիս-արևելքում, Քաշաֆռուդ գետի հովտում, Խորասան օստանի վարչական կենտրոնը: 584 հզ. բն. (1975): Ավտոճանապարհների հանգույց է, ունի երկաթուղային կայարան: Երկրի հս-արլ. մասի առևտրա-արդյունաբերական կենտրոնն է: Կա մետաղամշակություն, տեքստիլ, կաշվի-կոշիկի, սննդի արդյունաբերություն, շինանյութերի արտադրություն, տնայնագործություն (փիրուզի մշակում, գորգագործություն ևն): Ունի համալսարան: Մահմեդական շիաների ուխտագնացության կենտրոն է: Առաջին անգամ հիշատակվել է X դ.: Մ-ի ճարտ. հուշարձաններից են՝ իմամ Ռզայի գերեզմանը և այն շրջապատող պաշտամունքային միջնաբերդի անսամբլը (XII—XIX դդ.), մզկիթներ (Գոհար-շադ, 1405—1418), մեդրեսե (XV դ.), աղբյուրներ, սրբարաններ, գրադարաններ, կարավանատներ: XX դ. կառույցներից են Նադիր շահի դամբարանը (1961)՝ շահի հեծյալ արձանով, հիվանդանոցը (1965): Մ-ի շրջակայքում են՝ Մուսալլա մզկիթը (1676), Խոջա Ռաբիի դամբարանը, Ֆիրդուսու գերեզմանը (տապանատաղավարը՝ 1934):

**ՄԱՇՈՆԱՆԵՐ**, ժողովուրդ: Բնակվում են առավելապես Հարավային Ռոդեզիայում և Մոզամբիկի սահմանակից շրջաններում: Ընդհանուր թիվը՝ ավելի քան 3,2 մլն (1980): Խոսում են *բանտու* լեզվընտանիքի չիշոնա լեզվով: Մեծամասնությունը պահպանում է հավատալիքների տեղական ավանդույթները (նախնիների, բնության ուժերի պաշտամունք ևն), մնացածները քրիստոնյաներ են: Զբաղվում են հիմնականում հողագործությամբ, մասամբ՝ անասնապահությամբ: XIX դ. վերջից Մ-ի հողերը խլել են գաղութարարները, և նրանք ստիպված են գնալ աշխատելու քաղաքներում ու հանքերում:

**ՄԱՇՏԱԿ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Վանի վիլայեթի Հայոց ձոր գավառում: 1909-ին ուներ 61 տուն (319 շունչ) բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ և արհեստներով: Գյուղում կար եկեղեցի և վարժարան: Բնակիչները տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհ է գնացել զաղթի ճանապարհին: Փրկվածները ապաստանել են Արևելյան Հայաստանում և այլուր:

**ՄԱՇՏԱԿ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Խուլփ գավառում: 1909-ին ուներ 10 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է աքսորի ճանապարհին: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՄԱՇՏՈՑ**, ծիսարան: Հավանաբար ծագում է մ. թ. ա. I հազարամյակի սկզբին Հայաստանում գործածվող «մաշտու» («սուրբ», «սրբազան») և նույն հազարամյակի 2-րդ կեսին Աքեմենյան Իրանում տարածված «մազդա» անունից: Հին Հայաստանում Մ. է կոչվել հեթանոսական ծեսերի, ծեսերի, օրհնությունների, աղոթքների գիրքը: Քրիստոնեության մուտքից (301) հետո Հայոց եկեղեցին նույն անունով կոչեց իր ծիսական կարգերի, օրհնությունների ու աղոթքների գիրքը: Հասարակ կամ Փոքր Մ. բովանդակում է քահանային վերաբերող խորհուրդներն ու արարողությունները (մկրտություն, դրոշմ, մեռելաթաղ, սովորական օրհնություններ), Մայր Մ.՝ եպիսկոպոսին վերաբերող ծեսերն ու արարողությունները (ձեռնադրում, գավազան տալը, եկեղեցու օծում, քահանայաթաղ, մեծ օրհնություններ), Հայր Մ.՝ կաթողիկոսին վերաբերող արարողությունները (կաթողիկոսի օծում, մյուռոն-օրհնեք ևն):

*Գրկ.* Օրմանյան Մ., Ծիսական բառարան, Անթիլիաս, 1957:

**«ՄԱՇՏՈՑ»** 1266 թվականի, հայկական մագաղաթյա պատկերազարդ ձեռագիր: Ընդօրինակվել է 1266-ին Սսում: Գրիչն է Ավետիք քահանան: Նկարազարդել է *Թորոս Ռոսլինը* Հռոմկլայում: Պատվիրատուն է Վարդան եպիսկոպոսը: Այժմ պահվում է Երուսաղեմի Ս. Հակոբյանց վանքում (ձեռ. № 2027): Բացի խորաններից, լուսանցազարդերից, գլխատառերից ու գլխազարդերից ձեռագիրն ունի նաև ամբողջ էջը գրավող տերունական պատկերներ, որոնք պարփակված են թերթ զարդարված շրջանակներում և աչքի են ընկնում հորինվածքի պարզ կառուցվածքով: Մանրանկարների բարձր արվեստով

Թորոս Ռոսլին. «Երեք մանուկները հնոցում», մանրանկար 1266-ին պատկերազարդված «Մաշտոց»-ից (Երուսաղեմի Ս. Հակոբյանց վանք, ձեռ. № 2027)



ձեռագիրը դասվում է *Կիլիկիայի մանրանկարչության դպրոցի* XIII դ. 2-րդ կեսի լավագույն հուշարձանների շարքը:

*Գրկ.* Հովսեփյան Գ., Նյութեր և ուսումնասիրություններ հայ արվեստի և մշակույթի պատմության, պր. 2, Նյու Յորք, 1943: Ազարյան Լ., Կիլիկյան մանրանկարչությունը XII—XIII դդ., Ե., 1964:

*Լ. Ազարյան*

**ՄԱՇՏՈՑ Ա ԵՂԻՎԱՐԴԵՑԻ** (833—898), Հայոց կաթողիկոս 887-ից: 860-ից կրոնավորել է Սևանա վանքում, դարձել նրա վանահայրը: 874-ին Սյունյաց Մարիամ իշխանուհու առաջարկով կառուցել է տվել Սևանա վանքի Ս. Առաքելոց և Ս. Աստվածածին եկեղեցիները: Պահպանվել են Մ. Ե-ու երկու թղթերը՝ ուղղված սպարապետ Աբասին (870-ական թթ.) և Դվինի 893-ի երկրաշարժից տուժածներին (բերում է Հովհաննես Դրասխանակերտցի պատմիչը):

**ՄԱՇՈՒԿ**, մեկուսացած լեռ Հյուսիսային Կովկասում, Կովկասյան հանքային ջրերի շրջանում (ՌՍՖՍՀ Ստավրոպոլի երկրամաս): Բարձրությունը 993 *մ* է: Մ. նստվածքային ապարներով ծածկված լակոլիթ է: Կան հանքային աղբյուրներ: Գագաթը հարթեցված գմբեթաձև է: Հվ. լանջին է գտնվում 20 *մ* խորությամբ «Պրովալ» կարստային իջվածքը: Լանջերը անտառապատ են: Այստեղ է բալնեոլոգիական առողջարան Պյատիգորսկ քաղաքը: Մ-ի ստորոտին Մ. Յու. Լերմոնտովի մենամարտի տեղն է:

**ՄԱՇՈՒՐՅԱՆ** Մկրտիչ (Մակիչ) Մանուչարի (14.11.1897, Գորիս —20.11.1920, Գորիսի մոտ), Հայաստանում Մայիսյան ապստամբության և քաղաքացիական կռիվների մասնակից: ՌԿ(բ)Կ անդամ՝ 1917-ից: Հոկտեմբերյան սոցիալիստական


Մ. Մ. Մաշուրյան

մեծ հեղափոխության հաղթանակից հետո ներգրավվել է հեղափոխական գործունեության մեջ և շուտով դարձել Զանգեզուրի բոլշևիկյան կազմակերպության ղեկավարներից: 1919-ին Մ-ի մասնակցությամբ ստեղծվել է ՌԿ(բ)Կ Զանգեզուրի գավառային ընդհատակյա կոմիտե: Եղել է Զանգեզուրում գործող կարմիր պարտիզանների ջոկատի հրամանատարը: Մասնակցել է 1920-ի սեպտեմբերին Բաքվում գումարված Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների կոնֆերանսին: Զոհվել է դաշնակցական զորքերի դեմ մղված մարտերում: *Գ. Մանուկյան*

**ՄԱՇՈՒՐՅԱՆ** Սերգեյ Մանուչարի (21.12. 1910, Գորիս —21.10.1941, Տագանրոգի մոտ), հայ սովետական մաթեմատիկոս, ֆիզիկամաթեմատիկական գիտությունների թեկնածու (1938), դոցենտ (1939): Ավարտել է Երևանի համալսարանի բանվորական ֆակուլտետը (1929), Մոսկվայի պետական համալսարանի մեխանիկամաթեմատիկական ֆակուլտետը (1935): Երևանի համալսարանում դասավանդել է մաթեմատիկական ֆիզիկայի հավասարումներ, թվերի տեսության ընդհանուր և հատուկ դասընթացներ (1938—41): Գիտական աշխատանքները վերաբերում են ոչ գծային պարաբոլական հավասարումների տեսությանը: Զոհվել է Հայրենական մեծ պատերազմում՝ Տագանրոգի պաշտպանության համար մղված մարտում:

*Վ. Սաղաթելյան*

**ՄԱՈ ԴՈՒՆ** (իսկական անունը՝ Շեն Յան Բին, ծն. 1896), չին գրող, հասարակական գործիչ: Մինչև 1927-ը հանդես է եկել որպես հրապարակախոս, գրականագետ, քննադատ և թարգմանիչ: Առաջին գեղ. երկը՝ «Հիասթափություն», «Տատանումներ» և «Որոնումներ» վիպակներից բաղկացած «Խավարում» (1927—28)


Մաո Դուն

եռերգությունը, գրել է 1925—27-ի հեղափոխության պարտությունից հետո: 1928—1930-ին Մ. Դ. եղել է տարագրության մեջ՝ Ճապոնիայում, որտեղ գրել է «Մասրենի» (1929) և «Անցած տարվա խոտը» (1929) պատմվածքների ժողովածուները: 1930-ին, վերադառնալով հայրենիք, դարձել է Չինաստանի ձախ գրողների լիգայի առաջատար անդամներից մեկը: Չինական նորագույն գրականության մեջ սոցիալական առաջին էպոպեան դարձավ «Լուսաբացից առաջ» (1933, հայ հրտ. 1957) վեպը, ուր պատկերված է ազգ. բուրժուազիայի դրությունը և բանվորների պայքարը: Ճապոնիայի հետ պատերազմի տարիներին (1937—45) Մ. Դ. խմբագրել է «Վեռնի չժեննի» ամսագիրը: 1941-ին Հոնկոնգում լույս է ընծայել «Քայքայում» վեպը: 1942-ին Մ. Դ. գրել է «Տերևները՝ եղյամով շղարշված, կարմրին են տալիս, ինչպես ծաղիկները գարնանը» (1942) վեպը, իսկ 1945-ին՝ «Մեռելոցի օրերին» դրաման: Պատերազմից հետո մասնակցել է դեմոկրատական շարժումներին, զբաղվել թարգմանությամբ, աշխատել նոր վեպի վրա: 1946—1947-ին այցելել է ՍՍՀՄ, գրել «ՍՍՀՄ-ում իմ տեսածն ու լսածը» (1948) և «Զրույցներ Սովետական Միության մասին» (1949) գրքերը: 1949—64-ին Մ. Դ. եղել է գրականության և արվեստի աշխատողների համաչինական ասոցիացիայի նախագահի տեղակալը, ՉԺՀ կուլտուրայի մինիստրը և ՉԺՀ գրողների միության նախագահը: Զբաղվել է գրականագիտական և հրապարակախոսական գործունեությամբ: Այսպես կոչված կուլտուրական հեղափոխության շրջանում ենթարկվել է հալածանքի:

*Երկ.* Соч., т. 1—3, М., 1956.

**ՄԱՈ ՑԶԵ ԴՈՒՆ** (26.12.1893, գ. Շաոշան, Խունանի նահանգ —9.9.1976, Պեկին), չինական քաղաքական և կուսակցական գործիչ: 1920-ին միացել է կոմունիստական խմբակներին: 1921-ին մասնակցել է Չինաստանի կոմկուսի (ՉԿԿ) I համագումարին: 1923—25-ին և 1928-ից ՉԿԿ ԿԿ անդամ, 1927-ին Ցզինգանշան լեռնային շրջանում Չժու Դեի և ՉԿԿ ղեկավար այլ գործիչների հետ ստեղծել է հեղափոխական հենակետային բազա: 1928-ին նշանակվել է Չինաստանի կարմիր բանակի IV կորպուսի քաղ. կոմիսար: 1931-ին սովետական շրջանների ներկայացուցիչների I համաչինական համագումարում ընտրվել է Չինական Սովետական Հանրապետության ԿԳԿ և ԺԿԽ նախագահ: 1933-ից՝ ՉԿԿ ԿԿ քաղբյուրոյի անդամ: 1935-ին մտել է ՉԿԿ ԿԿ քարտուղարության մեջ: Այդ ժամանակից էլ կուսակցության ղեկավարումն ավելի ու ավելի է կենտրոնացել Մ. Ց. Դ-ի և նրա կողմնակիցների ձեռքում: 1943-ից Մ. Ց. Դ. ՉԿԿ ԿԿ-ի, ՉԺՀ-ի կազմավորումից (1949) հետո՝ ՉԺՀ ժողովրդա-հեղափոխական ռազմ. խորհրդի, 1954-ից ՉԺՀ և ՉԺՀ Պաշտպանության պետ. կոմիտեի նախագահն էր: 1941—45-ին նրա նախաձեռնությամբ անցկացվեց այսպես կոչված կուսակցական աշխատանքային ոճի կարգավորման շարժումը, 1950-ական թթ. վերջին և 1960-ական թթ. սկզբին հռչակեց ՉԿԿ արտաքին քաղ. կուրսը, որին հատուկ են միապետական հեգեմոնիզմը, հակասովետիզմն ու համաշխարհային կոմունիստական շարժման պառակտումը: 1966-ին ծավալված այսպես կոչված կուլտուրական հեղափոխությունը հետապնդում էր Մ. Ց. Դ-ի միանձնյա իշխանությունը ամրապնդելու նպատակ: ՉԿԿ IX (1969) համագումարը Մ. Ց. Դ-ին հռչակեց գմահ առաջնորդ, իսկ X (1973) և XI (1977) համագումարները ընդգծեցին, որ ՉԿԿ ղեկավար գաղափարախոսության հիմքը «Մ. Ց. Դ-ի գաղափարներն են»:

**ՄԱՈԻԶՄ**, մարքսիզմ-լենինիզմին թշնամի մանրբուրժուական-նացիոնալիստական հոսանք Չինաստանի կոմունիստական կուսակցության մեջ: Իրենից ներկայացնում է սուբյեկտիվ-վոլյունտարիստական, գռեհիկ-մատերիալիստական գաղափարների խառնուրդ: Մ. կազմավորվեց XX դ. 50-ական թթ. վերջին, երբ որոշակիորեն դրսևորվեցին ՉԿԿ ղեկավարության պառակտիչ գործողությունները միջազգային կոմունիստական շարժման մեջ: Մ-ի առաջացումը անմիջականորեն կապված է *Մաո Ցզե Դունի* գործունեության հետ: Դեռևս ՉԿԿ VII համագումարի (1945) փաստաթղթերում տեղ գտած «Մարքսիզմ-լենինիզմի չինականացման» գաղափարի ներքո մաոիստները սկսել էին հարձակումները բանվոր դասակարգի հեղափոխական ուսմունքի հիմնական դրույթների դեմ: ՉԿԿ IX համագումարում (1969) Մ. պաշտոնապես հայտարարվեց որպես Չինաստանի կոմկուսի «տեսական-գաղափարական հիմք» և «արդի դարաշրջանի մարքսիզմ-լենինիզմ»: Այս գնահատականը հաստատվեց նաև ՉԿԿ X (1973) և XI (1977) համագումարներում: Մաոիստները կոչ են անում հեղափոխությունը կատա-

րել ոչ պրոլետարական ապաղասակարգային տարրերի ու երիտասարդության ոչ հասուն խավերի միջոցով: Մ. պնդում է, որ սոցիալիզմի պայմաններում, ներառյալ նրա հասուն փուլը, զարգացման կապիտալիստական ու սոցիալիստական ուղիների միջև տեղի է ունենում մշտական պայքար, որ առկա է կապիտալիզմի վերականգնման վտանգ, որը կանխելու համար անհրաժեշտ են «հեղափոխություններ»: Նման «հեղափոխության» տիպար էր 60-ական թթ. 2-րդ կեսին Մաոի ղեկավարությամբ կազմակերպված այսպես կոչված կուլտուրական հեղափոխությունը: Այդպիսի «հեղափոխությունները», որոնք փաստորեն Մ-ի հնարավոր հակառակորդներից ազատվելու միջոց է, ըստ Մաոի, պետք է կրկնվեն պարբերաբար: Մաոիստները իրենց պրակտիկ գործունեության մեջ անտեսում են ժողովրդի կենսամակարդակի բարձրացման հարցը, հետամնացությունն ու աղքատությունը համարելով նոր հասարակարգի կառուցման բարենպաստ պայմաններ՝ դրանով իսկ արդարացնելով իրենց վարած ռազմարկածախնդրական գիծը Չինաստանում: Մ. աչքի է ընկնում ծայրահեղ էկլեկտիզմով և սուբյեկտիվիզմով տեսության մեջ և վոլյունտարիզմով՝ քաղաքականության մեջ: Մ-ի վրա մեծ ազդեցություն են թողել *անարխիզմը* և կոմունիստական շարժման մեջ տեղ գտած ռևիզիոնիստական հոսանքները՝ առանձնապես *տրոցկիզմը*: Մ. պայքարի սլաքն ուղղում է սոցիալիզմի առաջին երկրի՝ Սովետական Միության դեմ, այդ թշնամանքը բացատրելով իբրև գոյություն ունեցող անհաղթահարելի սկզբունքային տարաձայնություններով. մինչդեռ, իրականում, հակասովետիզմի հիմնական պատճառը մեծապետականխանական շովինիզմի գաղափարախոսությունն է: Մ. դեմ է միջազգային լարվածության թուլացմանը և տարբեր սոցիալական սիստեմ ունեցող երկրների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքին: Համաշխարհային սոցիալիստական հեղափոխության հաղթանակը Մ. կապում է համաշխարհային պատերազմի հետ: Մաոիստները լիովին հեռացել են պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերից՝ քարոզելով երկու «գերտերությունների հեգեմոնիայի դեմ պայքարի» տեսությունը: Մաո Ցզե Դունի մահից (1976) հետո նույնպես Մ. շարունակում է մնալ չին. ղեկավարության գաղափարական-քաղաքական գործունեության հիմքը: Մաո Ցզե Դունի առանձին դրույթների և մաոական գործունեության որոշ կողմերի սրբագրումը չի փոխում Պեկինի հակասոցիալիստական կուրսի էությունը: Մ. իր գաղափարներով և պրակտիկ գործունեությամբ դարձել է վտանգավոր հոսանք միջազգային կոմունիստական շարժման մեջ՝ խաղալով հակակոմունիզմի ու իմպերիալիզմի կամակատարի, գործակցի դեր: Կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969-ի Մոսկվայի միջազգային խորհրդակցության պատվիրակությունների մեծամասնությունը դատապարտեց Մ., որը վտանգի տակ է դնում սոց. շինարարությունը Չինաստանում, վարկաբեկում գիտական սոցիալիզմը: Հակագիտական, հասարակական զարգացման օրինաչափություններին հակասող Մ. իբրև քաղ. հոսանք անհեռանկարային է:

*Գրկ.* ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, Ե., 1971: ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, Ե., 1976: ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, Ե., 1981: Международное совещание коммунистических и рабочих партий, М., 1969—73; Маоизм глазами коммунистов, М., 1969; Критика теоретических концепций Мао Цзедуна, М., 1970; Маоизм без маски (Сб. статей), М., 1970; Критика теоретических основ маоизма, М., 1973; Маоистский курс: против мира и прогресса, М., 1973; Маоизм — идейный и политический противник марксизма-ленинизма, М., 1974; Маоизм: военная теория и практика, М., 1978; Маоизм без Мао, (Сб. статей), М., 1979.

**ՄԱՈՐԻՆԵՐ**, Նոր Զելանդիայի բնիկները: Թիվը՝ մոտ 250 հզ. (1980): Պատկանում են պոլինեզիական ռասային, նմանություններ կան մոնղոլոիդների և ավստրալոիդների հվ. ճյուղի հետ: Խոսում են մաորիական լեզվով, մեծ մասը տիրապետում է նաև անգլերենին: Ժամանակակից Մ. քրիստոնյաներ են (անգլիկաններ, կաթոլիկներ, բապտիստներ են): XIX դ. 1-ին կեսին Մ-ի բազմաթիվ ցեղերի մեջ քայքայվել են նախնադարյան համայնական կարգերը: Այժմյան նորզելանդացիների մեջ Մ. կազմում են ազգային փոքրամասնություն: Մ. զբաղվում են հողագործությամբ, անասնապահությամբ, անտառային տնտեսությամբ են: XX դ. սկսվեց Մ-ի էթնիկական համախմբումը, որն ընթանում է անգլո-նորզելանդացիների հետ նրանց ձուլմանը զուգահեռ:

**ՄԱՉԱԴՈ-Ի-ՌՈՒԻՍ** (Machadoy Ruiz) Անտոնիո (1875—1939), իսպանացի բանաստեղծ: Հրատարակել է «Անձկություն» (1903), «Կաստիլիայի դաշտերը» (1912), «Նոր երգեր» (1924), «Պատերազմ» (1937) ժողովածուները: 1920—30-ական թթ. եղբոր՝ Մանուել Մաչադո-ի-Ռուիսի հետ գրել է մի քանի չափածո պիես: Իսպ. ժողովրդի ազգային-հեղափոխական կռիվների (1936—39) սկզբից ներ նվիրվել է հանրապետության պաշտպանության գործին: Ճառով հանդես է եկել գրողների միջազգային երկրորդ կոնգրեսում (1937)՝ նվիրված մշակույթի պաշտպանությանը: 1939-ի հունվարին բանաստեղծը բաժանել է իսպ. զաղթականների ողբերգությունը և ֆրանս. սահմանն անցնելուց մի փոքր հետո մեռել:

*Ա. Ալիքյան*

**ՄԱՊՈՒՏՈՒ** (Maputo) (մինչև 1976-ը՝ Լոռենսու Մարկիշ), Մոզամբիկի մայրաքաղաքը: Մոտ 400 հզ. բն. (1976): Նավահանգիստ է Հնդկական օվկիանոսի Դելագոա խորշի ափին, երկաթուղիով կապված է Հարավ-Աֆրիկյան Հանրապետության և Զիմբաբվեի հետ: Կան մեքենաշինական, նավթավերամշակման, սննդի, տեքստիլ, քիմ., փայտամշակման և այլ. այլ ձեռնարկություններ, օդանավակայան, համալսարան: Ծովային կուրորտ է:

**ՄԱՉԱԴԻԱ**, Մ ա ճ ա տ ի ա, հայաբնակ գյուղ Վրացական ՍՍՀ Ախալքալաքի շրջանում, շրջկենտրոնից 7,5 *կմ* հյուսիս-արևելք: Կոլտնտեսությունը զբաղվում է անասնապահությամբ, կարտոֆիլի, բանջարեղենի, մասամբ հացահատիկի մշակությամբ և այգեգործությամբ: Գյուղում գործում է միջնակարգ դպրոց, գրադարան, ակումբ, բուժկայան և կինո: Մ. հիմնադրել են Էրզրումի նահանգի համանուն գավառի Ուլուտում գյուղից գաղթած հայերը (29 ընտանիք), 1830-ին: Գյուղում կա եկեղեցի (1869):


Մաչաղիա

**ՄԱՉԱՁ**, միջնադարյան գյուղատեղի Վանա լճի արևելյան ափին, Հայոց ձոր գավառում: Ըստ ավանդության Հայկ նահապետը բռնակալ Բելին հաղթելուց հետո այստեղ է դադար առել և հաղթական տոնախմբություն սարքել՝ վառելով հազար խարույկ, որն անշեջ են պահել երեք օր: Մ. երկար դարեր ուխտատեղի է եղել հայերի համար:

**ՄԱՉԱՐԱ**, գյուղ Աբխազական ԻՍՍՀ Գուլրիփշիի շրջանում, շրջկենտրոնից 11 *կմ* հյուսիս-արևմուտք: Բնակչությունը՝ հայեր, վրացիներ, աբխազներ, ռուսներ: Կոլտնտեսությունն զբաղվում է ծխախոտի, ցիտրուսային կուլտուրաների և եգիպտացորենի մշակությամբ, այգեգործությամբ, մեղվաբուծությամբ, անասնապահությամբ: Ունի հայկ., վրաց. և ռուս. տարրական դպրոց, կապի բաժանմունք: Հայերը եկել են Տրապիզոնի շրջանից, 1896-ին:

**ՄԱՉԱՐՆԵՐ**, տես *Հունգարներ*:

**ՄԱՌ** Նիկողայոս Ցակովլևիչ (25.12.1864, Քութայիս —20.11.1934, Լենինգրադ), սովետական արևելագետ, հայագետ, լեզվաբան: Ակադեմիկոս (1909-ից): Հայրը շոտլանդացի էր, մայրը՝ վրացուհի: Մանկության տարիներին ապրել է վրաց. Օզուրգեթ (այժմ՝ Մախարաձե) գյուղավանում: 1884-ին ավարտել է Քութայիսի գիմնազիան և ընդունվել Պետերբուրգի համալսարանի արևելյան ֆակուլտետը, մասնագիտացել հայագիտության, վրացագիտության, իրանագիտության ու դասական բանասիրության բնագավառներում: 1891-ին նշանակվել է Պետերբուրգի համալսարանի հայագիտության ամբիոնի պրիվատ-դոցենտ, 1900-ին՝ հայ-վրացական բանասիրության ամբիոնի վարիչ, 1901-ին ստացել է բանասիրական գիտությունների դոկտորի աստիճան և պրոֆեսորի կոչում: 1915—16-ին Հ. Օրբելու հետ մեկնել է Վան և ուսումնասիրել ուրարտ. սեպագիր արձանագրությունները: 1920—1924-ին մշակել է հնէաբանության մեջ վերլուծական մեթոդը և գործադրել մի շարք գիր չունեցող ժողովուրդների լե-



Ն. Յա. Մառ

զուների ուսումնասիրման բնագավառներում: 1922-ին Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ և հանձնարարությամբ հիմնել է Նյութական կուլտուրայի պատմության ակադեմիան (ГАИМК) և ղեկավարել մինչև իր մահը: 1925-ին հիմնել է Արևելքի ժողովուրդների ազգագրության և ազգային մշակույթի ուսումնասիրման ինստ-ը (եղել է առաջին դիրեկտորը): 1925—1930-ին եղել է Լենինգրադի հանրային գրադարանի դիրեկտորը: 1930-ին ընտրվել է ՍՍՀՄ ԳԱ փոխպրեզիդենտ: 1931-ին հիմնել է ՍՍՀՄ ԳԱ հաբեթաբանության ինստ-ը (հետագայում վերանվանվեց լեզվի և մտածողության ինստ.): 1933—34-ին գիտական արշավախումբ է կազմակերպել դեպի Հունաստանի հվ. ափերը և Կիպրոս:

Մ. գիտական գործունեությունն սկսել է իբրև հայ մատենագրության պատմաբան և մանրազնին ուսումնասիրել Եղիշեի, Եզնիկ Կողբացու, Ղազար Փարպեցու, Մխիթար Գոշի գործերը: Մատենագրության պատմության խնդիրներ արծարծելիս Մ. ուսումնասիրել է ձեռագրական հավաքածուները, քրիստոնյա Արևելքի ժողովուրդների լեզուներով պահպանված խմբագրություն-պատումները: Էջմիածին, Սինա և Աթոս կատարած գիտական ուղեվորությունների ընթացքում նա բացահայտեց և հրապարակեց բազմաթիվ առաջնակարգ գրավոր հուշարձաններ, այդ թվում՝ Ագաթանգեղոսի արաբ. խմբագրությունը (թարգմ. հունարենից), Գրիգոր Խանձթեցու վարքի վրաց. բնագիրը ևն: Աղբյուրագիտական առումով առանձնահատուկ նշանակություն ունեն Մովսես Խորենացու, Անանունի (Սեբեոսի), Հովհաննես Կոզեռնի, Շոթա Ռուսթավելու, Պետրիծիի և այլոց երկերին նվիրված հոդվածներն ու մենագրությունները: Մ. մասնավորապես բացահայտել է հայ մատենագրության նշանակությունը ասոր. և հուն. հուշարձանների նախնական խմբագրությունները վերականգնելու գործում, ընդգծել նրա ազգային ոգին ու կոչվածությունը՝ չկտրելով Արևելքի ընդհանրական մատենագրական միջավայրից: Նոր, ճըշմարիտ ու հեռանկարային էր հայ-վրացական պատմա-մշակութային ընդհանրությունների լուսաբանությունը, via armeniaca-ի (Անդրկովկասի ժողովուրդների արլ. քրիստոնեական մատենագրությանը հայերենի միջնորդավորմամբ հաղորդակցվելը) հաստատումը: Մշակութային պատմության խնդիրներ քննարկելիս Մ. հաճախ է անդրադարձել Անդրկովկասի ժողովուրդների էթնիկական ու դավանական պատմությանը: Առաջինը նա է ապացուցել, որ VII դ. սկզբին եկեղեցիների ազգայնացմամբ մշակութային ու մատենագրական աղերսները չընդհատվեցին. Տայքի, Կղարջքի և Հերքի տարածքներում հայ քաղկեդոնականությունը պահպանում էր իր դավանակիցների հետ ունեցած գրական փոխթափանցումների ու պաշտամունքային կառույցների ընդհանրականությունը: Հակադրվելով եվրոպացի մի շարք արևելագետների (Գուտշմիդտ, Կարիեր ևն)՝ Մ. հերքեց այն թյուր կարծիքը, թե իբր Մովսես Խորենացին նույն ինքը Մար Աբաս Կատինան է, և ապացուցեց, որ Մովսես Խորենացին իր Պատմությունը գրելիս իրոք ձեռքի տակ ունեցել է իր նշած աղբյուրը: *Արքայունի* առեղծվածին նվիրված մենագրությամբ (1904) Մ. ուրվագծեց այդ բարդ ու ընդգրկուն պրոցեսի պատմությունը: Մերժելով անցյալի վերաբերյալ ավանդական պատկերացումները՝ Մ. առաջադրեց ու հետևողականորեն կիրառեց հոգևոր և նյութական մշակութային արժեքների համադրական ուսումնասիրության մեթոդը: 1890-ին Մ. ուսումնասիրեց Էջմիածնի և Սևանի մատենադարանների հայկ. ձեռագրերը, այնուհետև հետախուզական պեղումներ սկսեց Հայաստանի հնավայրերում: Ակներում, Շիրակավանում, Դվինում, Զվարթնոցում և Գառնիում նախնական պեղումներին զուգընթաց Մ. հիմնավորապես զբաղվեց *Անիի* պեղումներով (1893—1917, ընդմիջումներով): Դա համակողմանիորեն մտածված ու ծրագրված հնագիտական աշխատանքի առաջին ձեռնարկումն էր Հայաստանում: Պեղումների ընթացքում երևան հանեց Բագրատունյաց Գագիկ Ա թագավորի ամբողջական արձանը, ինչպես և Գագկաշեն եկեղեցին՝ հատակագծով և ձևով նման Զվարթնոցին: Ճարտ. և արվեստի կոթողներից բացի այստեղ ուսումնասիրվում էին միջնադարյան քաղաքաշինությունը, քաղաքի սոցիալական ու վարչական կառուցվածքը, առևտուրն ու արհեստագործությունը ևն: «Անի» աշխատությունը (1934, ռուս.) վերոհիշյալ գիտական ուսումնասիրությունների ամփոփումն էր, նաև՝ Կովկասի միջնադարյան պատմությունն ուսումնասիրելու մեթոդական ու հետազոտական ծրագիր: Շուրջ երկու տասնամյակ. տևած. պեղումների շնորհիվ արմատապես փոփոխվեցին եղած պատկերացումները, և Հայաստանում դըրվեցին ակադեմիական գիտության հիմքերը: Մասնավորապես Անիում աշխատելու ընթացքում Մ. մշակեց ու իր առաջին հրապարակումներով արմատավորեց վիմական աղբյուրների հետազոտման մեթոդներն ու եղանակները: Նյութական մշակույթի ուսումնասիրությունները հաստատեցին ու խորացրին Մ-ի այն դրույթը, թե հայոց պատմությունն ու մշակույթը մեկուսի դրսևորումներ չեն: Լեզվական իրողություններից, մատենագրության պատմությունից ու բանահյուսությունից քաղված փաստերը վավերացվեցին նյութական մշակույթի հետազոտություններով: 1909—10-ին Գեղամա լեռների «վիշապների» հայտնաբերումով ու քննությամբ Մ. հավաստեց հայոց պաշտամունքային պատկերացումների առնչությունը սեմական աշխարհի հետ: Գիտ. գործունեության առաջին և երկրորդ տասնամյակներում Մ. զբաղվել է գերազանցապես տարբեր լեզուներով գրված բնագրերի համեմատությամբ ու քննությամբ, ուստի լեզվաբանության բնագավառում գործ է ունեցել տերմինների, գրական-մշակութային փոխառությունների, ներթափանցումների հետ: Այս ընթացքում նա բացահայտել է արլ. լեզուներից հայերեն և ապա՝ հայերենի միջնորդավորմամբ վրաց. լեզու մտած բառային փոխառությունները: Հայ-վրացական բանասիրության այս նվաճումը (նաև հայերենում առկա ոչ հնդեվրոպական բաղադրամասի վերաբերյալ Մ-ի գնահատությունը) ցարդ պահպանել է գիտ. նշանակությունը: Մ-ի՝ լեզուների ծագումնաբանական խնդիրներին նվիրված տեսական աշխատությունները բաժանվում են երեք շրջանի: 1908—16-ին նա հաբեթական էր համարում միայն քարթվելական լեզուները, 1916—20-ին ընդգրկեց աբխազա-ադըղեական ու դաղստանյան լեզուները, իսկ վերջին՝ երրորդ շրջանում նաև պելասգերենը, էտրուսկերենը, բասկերենը: Հետզհետե ձեվավորվեց «նոր ուսմունք» հասկացությունը (աստիճանական զարգացման տեսական հիմնավորումով), որը, ըստ էության, Մ-ի վարկածների հանրագումարն էր և հեղինակից անկախ ու ելակետային վրիպումներով հանդերձ վերածվեց դպրոցի՝ հետագայում արդարացիորեն ենթարկվելով քննադատության: Նորագույն հետազոտությունները Մ-ի կռահումների մեջ իրական ու օգտակար շատ մտահանգումներ են գտնում: «Լեզու և մտածողություն», «լեզվի հնէաբանություն» հասկացությունները վերահաստատել են իրենց գոյության իրավունքը: Մ. նաև գիտության խոշորագույն կազմակերպիչ էր: Նրա գըլխավորությամբ հայրենական արևելագիտությունը ակնառու նվաճումների հասավ: Մ-ի հիմնադրած «Խրիստիանսկիյ Վոստոկ» («Христианский Восток», 1912—1922) ակադեմիական հանդեսն իր հեղինակությամբ ու կարևորությամբ եզակի հրատարակություն է, իսկ «Հայ-վրացական բանասիրության բնագրեր ու հետազոտություններ», «Հայկական-վրացական մատենադարան», «Անվո շար», «Հայ վիմագրության հուշարձաններ», «Լեզու և մտածողություն», «Կովկասյան բանասիրության բնագրեր և հետազոտություններ», «Հաբեթական տարրերը Հայաստանի լեզուներում» և այլ մատենաշարեր դարձան հայրենական գիտության կազմավորման դպրոցներ: Մ-ի մի շարք աշակերտներ (Ն. *Ադոնց*, Հ. *Օրբելի*, Ի. *Ջավախիշվիլի*, Ի. *Մեշչանինով*, Գ. *Ղափանցյան*, Վ. *Աբաև* ևն) գիտ. առանձին բնագավառներում մեծ դեր են կատարել: Մ-ի և նրա աշակերտների անվան հետ է կապված *կովկասագիտության* նոր շըրջանի պատմությունը: Հայ ժողովրդի օրհասական պահերին, հատկապես 1916-ին, Մ-ի ջանքերի շնորհիվ փրկվեցին հայոց մշակույթի բազմաթիվ հուշարձաններ: Նըրանց մեջ գիտնականը տեսնում էր մի ողջ ժողովրդի գոյության խորհուրդն ու ազդակը: Մ. 1931-ին պարգևատրվել է Լենինի շքանշանով:

*Երկ.* Նիկողայոս Յակովլևիչ Մառ, Ե., 1965 (Նյութեր հայագիտության գործունեության և

բիբլիոգրաֆիայի համար, 10): Избр. работы, т. 1—5, М.—Л., 1933—37.

*Գրկ.* Մ ո վ ս ի ս յ ա ն Ա., Ն. Ցա. Մառի կյանքը և ստեղծագործությունը, Ե., 1946: Մառը և հայագիտության հարցերը, Ե., 1968: Մ ն ա ց ա կ ա ն յ ա ն Ա. Խ., Նիկողայոս Մառը և հայկական ճարտարապետությունը, Ե., 1969: Миханкова В. А., Николай Яковлевич Марр. Очерк его жизни и научной деятельности, 3 изд., М.—Л., 1949; Абаев В. И., Н. Я. Марр (1864—1934). К 25-летию со дня смерти, «Вопросы языкознания», 1960, № 1; Орбели И. О., Н. Я. Марр как археолог, «Избранные труды», Е., 1963. *Պ. Մուրադյան*

**ՄԱՌԱԽՈՒՂ**, օդի երկրամերձ շերտում ջրի մանր կաթիլների կամ սառցի բյուրեղների կուտակում, որը նվազեցնում է հորիզոնական տեսանելիությունը մինչև 1 *կմ*: Հակառակ դեպքում օդի այս կարգի պղտորությունը կոչվում է մշուշ կամ մգաշղարշ: Ավելի լայն իմաստով Մ. կաթիլահեղուկային դիսպերս ֆազով աերոզոլ է, որն առաջանում է գերհագեցած գոլորշիների կոնդենսացումից: Տարբերում են Մ-ի 3 հիմնական տեսակ՝ սառեցման, գոլորշիացման և խառը: Սառեցման Մ. առաջանում է, երբ օդի ջերմաստիճանը նվազելով (ադվեկտիվ կամ ռադիացիոն) իջնում է ցողի կետից, դիտվում է մեծ մասամբ գիշերները կամ վաղ առավոտյան: Գոլորշիացման Մ. Երկրի տաք մակերևույթից դեպի ցուրտ օդը տեղի ունեցող գոլորշիացման արդյունք է, դիտվում է տարվա ցուրտ եղանակներին ջրային մակերևույթների և գետերի վրա: Խառը Մ. առաջանում է տարբեր ջերմաստիճանի և խոնավության օդային զանգվածների խառնվելու հետևանքով: Տարբերում են նաև ներզանգվածային և ճակատային (առաջանում է *մթնոլորտային ճակատի* շրջակայքում) Մ-ներ: Հաճախ դիտվում են ներզանգվածային և սառեցման Մ-ներ:

**ՄԱՌԱՄԲԻՋԻ** (Murrumbidgee), գետ Ավստրալիայի հարավ-արևելքում, Մուրեյ գետի աջ վտակն է: Երկարությունը 2172 *կմ* է, ավազանը՝ 165 հզ. *կմ²*: Սկիզբ է առնում Ավստրալիական Ալպերի հս. լեռնաճյուղերից: Գլխավոր վտակը Լակլանն է (աջից): Հոսքը կարգավորված է (գետի վրա կա ջրամբար և ՀԷԿ): Ջրի տարեկան միջին ծախսը Բալրանալդ քաղաքի մոտ 77 *մ³/վրկ* է: Ջրերն օգտագործվում են ոռոգման համար: Անձրևային շրջանում նավարկելի է մինչև Ուոգա քաղաքը: Չոր եղանակին երբեմն ցամաքում է:

**ՄԱՌԱՆ**, տնտեսական օժանդակ կառույց-մթերանոց ժողովրդական տան համալիրի մեջ, ուր պահվում են ուտելիք և ըմպելիք: Մ. լի է լինում հատկապես ձմռանը. կարասների, կճուճների, տկերի, տըկճորների մեջ պահվում են կաթնամթերք, թթուներ, խմիչք, չոր և թարմ մրգեր, կախան, պահածո մսեղեն ու անուշեղեն, մեղր ևն: Ճարտ. առումով Մ. լեռնային-նախալեռնային գոտում կազմել է տան համակառույցի անբաժան մասը, իսկ հովտային շրջաններում եղել է նույն համալիրին կից առանձին շինություն՝ *հնձանի* հետ համատեղ (հնձան-մառան): Հին և միջնադարյան Հայաստանում արքունական, իշխանական և վանքապատկան համակառույցների կազմում Մ. եղել է ոգելից խմիչքների տնական պահեստավորման բաժանմունք և ունեցել տնօրեն-մառանապետ: Հետագայում, կապված ոգելից խմիչքների արդ. արտադրության հետ, Մ. դարձել է նաև գինու, կոնյակի պահեստավորման և հնեցման համար նախատեսված կառույց՝ համապատասխան արտադրամասերին առընթեր:

Մ. ցեղջկական միջավայրում ձմռանը հաճախ ծառայել է նաև որպես նորապսակների ժամանակավոր կացարան՝ «մեղրամսի» ընթացքում: *Դ. Վարդումյան*

**ՄԱՌԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏ 1266**, տեղի է ունեցել օգոստոսի 23-ին, Եգիպտոսի արաբական սուլթանության և Կիլիկյան Հայաստանի զորքերի միջև, Մառի կոչվող կապանում (Սև լեռների շրջան): Եգիպտոսի սուլթան Բիբարսը, օգտվելով մոնղ. տիրապետության տրոհումից ու թուլացումից, վերանվաճեց Հյուսիսային Ասորիքը և 30-հազարանոց զորաբանակով ներխուժեց Կիլիկիա: Հեթում Ա թագավորը շտապեց դաշնակից մոնղոլներից զինական օգնություն խնդրելու, թշնամու դեմ ուղարկելով 15-հազարանոց մի զորամաս՝ իր որդիներ Լևոնի ու Թորոսի հրամանատարությամբ: Հակառակորդի գերակշռող ուժերի (սուլթանի բանակին միացել էր նաև Հալեպի ամիրայության 15-հազարանոց զորամասը) դեմ հայկ. զորքերը նահանջեցին, Թորոսը մարտում զոհվեց, իսկ Լևոնը գերեվարվեց: Մինչև Հեթում Ա-ի վերադարձը թշնամին ավերեց և ավարի մատնեց Սիս մայրաքաղաքը և այլ բնակավայրեր, գերեվարեց շուրջ 40 հզ. բնակիչ:

**ՄԱՌԼՈ** (Marlowe) Քրիստոֆեր (1564—1593), անգլիացի բանաստեղծ և դրամատուրգ: Ավարտել է (1583) Քեմբրիջի համալսարանը: Հրաժարվելով հոգևոր պաշտոնից՝ 1587-ին մեկնել է Լոնդոն, դարձել դերասան: Ստեղծագործություններում Մ. հումանիստական հայացքներն ու գիտունությունը զուգորդել է անգլ. ժող. թատրոնի ավանդույթների հետ: Աթեիստական և հանրապետական մտքերի համար կյանքի վերջին տարիներին եղել է գաղտնի ոստիկանության հսկողության տակ: Սպանվել է պանդոկում միտումնավոր սարքված կռվի ժամանակ:

Մ-ի առաջին ողբերգությունը «Մեծ Թամեռլան»-ն է (1587—88, հրտ. 1590)՝ դրամայի վերածված կենսագրությունը Թեմուրի, որի բերանում աստվածամարտ հանդուգն խոսքեր են դրված: «Դոկտոր Ֆաուստի ողբերգական պատմությունը» (1582, հրտ. 1604) պիեսի կենտրոնում կերպարն է գրքացի, ուսյալ դոկտորի, որի համար իմացությունը վեր է ամեն ինչից. հանուն դրա նա ըմբոստանում է նաև կրոնի դեմ: Տիտանականությունն է բնորոշ «Մալթացի հրեան» (մոտ 1588, հրտ. 1633) ողբերգության հերոսի համար: «Էդուարդ II» (1593, հրտ. 1594) պատմական ժամանակագրության մեջ Մ. արդեն հերոսներին զրկել է բացառիկությունից՝ նրանց մոտեցնելով կյանքին: Նրա պատմական ժամանակագրության մեջ, ինչպես հետագայում Շեքսպիրի ժամանակագրության մեջ, քննարկվում են քաղ. այժմեական խնդիրներ: Մ-ի ստեղծած ողբերգությունը նոր փուլ էր այդ ժանրի զարգացման ասպարեզում:

*Երկ.* The Works..., v. 1—6, L., 1930—33.

*Գրկ.* Парфенов А., Кристофер Марло, М., 1964.

**ՄԱՌՆ** (Marne), գետ Ֆրանսիայի հյուսիսում, Սենի աջ վտակը: Երկարությունը 525 *կմ* է, ավազանը՝ 12,7 հզ. *կմ²*: Սկիզբ է առնում Լանգր սարավանդից, Փարիզի մոտ միախառնվում Սենին: Սնումը անձրևային է: Վարարում է ձմռանը, ծանծաղում՝ ամռանը: Նավարկելի է մինչև Էպեռնե քաղաքը: Ջրանցքներով միացած է Մաասի և Հռենոս գետերի ավազաններին: Մ-ի մոտ առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ տեղի է ունեցել խոշոր ճակատամարտ (տես *Մառնի ճակատամարտ 1914*):

**ՄԱՌՆԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏ 1914**, խոշոր ճակատամարտ անգլո-ֆրանսիական և գերմանական զորքերի միջև, *Մառն* գետի մոտ, առաջին համաշխարհային պատերազմի (1914—18) ժամանակ, սեպտեմբերի 5—12-ը: Ավարտվել է գերմ. զորքերի պարտությամբ: Երկու կողմից ճակատամարտին մասնակցել են 116 դիվիզիա (մոտ 2 մլն զինվոր), ավելի քան 6.600 թնդանոթ: Գերմ. զորքերի անհաջողության հիմնական պատճառներն էին ռազմաճակատի արմ. թևում ուժերի փոխհարաբերության փոփոխությունը հօգուտ Անտանտի բանակների, գերմ. հրամանատարության համար բավարար քանակությամբ պահեստային ուժերի բացակայությունը, ռուս. բանակի վճռական հարձակումը Արևելյան Պրուսիայում, որը ստիպեց գերմ. հրամանատարությանը արմ. ռազմաճակատից ուժեր փոխադրել արլ.: Գերմ. զորքերի պարտությունը ձախողեց պատերազմում շտապ հաղթանակ ձեռք բերելու գերմ. ստրատեգիական պլանը:

Մառն գետի մոտ ճակատամարտ տեղի է ունեցել նաև 1918-ին, գերմ. և Անտանտի զորքերի միջև, երբ գերմ. հիմնական ուժերը նահանջել են՝ տալով մեծ կորուստներ:

**ՄԱՌՆԿՈՒ-ՄԶՐԵՆ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Մուշի գավառում: 1909-ին ուներ 10 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Գյուղի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է աքսորի ճանապարհին:

**ՄԱՌՔ ՀԱՅԿԱՆՈՒՇ** Մարգարի (1883, Կ. Պոլիս —1966, Կ. Պոլիս), հայ գրող, հասարակական գործիչ: 1898-ին ավարտել է Էսայան միջնակարգ վարժարանը: Երկար տարիներ ուսուցչություն է արել Կ. Պոլսի հայկ. դպրոցներում: 1905-ին իր ամուսնու՝ Վ. Թոշիկյանի հետ երկու տարի հրատարակել է «Ծաղիկ» հանդեսը: 1907-ին մեկնել է Զմյուռնիա, աշխատակցել «Արշալույս» և «Արձագանք» թերթերին: 1909-ին վերադարձել է Կ. Պոլիս, արձակ ու չափածո գործերով հանդես եկել «Բյուրակն», «Հայաստանի կոչնակ», «Ժամանակ», «Երիտասարդ հայուհի» և այլ պարբերականներում: 1919—32-ին հրատարակել է «Հայ կին» կիսամսյա հանդեսը: 1921-ին լույս է տեսել նրա «Ծուլու-



Հ. Մառք

թյան պահերես» արձակ բանաստեղծությունների ժողովածուն: *Մ. Կուրտիկյան*

**ՄԱՍ ԵՎ ԱՄԲՈՂՋ**, առարկաների և երևույթների կառուցվածքային կողմը բնութագրող փիլիսոփայական կատեգորիաներ, որոնց հարաբերակցության տարբեր մեկնաբանությունները ծառայում են ճանաչողական տարբեր խնդիրների: Պարզագույն դեպքում ամբողջը մասերի (այն կազմող միատեսակ առարկաների) սոսկական գումարն է, ուստի այն վերլուծելով մասերի՝ մենք ճանաչում ենք ամբողջը և, հակառակը, ամբողջի հատկությունները կարող են փոխադրվել մասերի վրա: Այսպիսի գումարային ամբողջից, ըստ էության հավաքականությունից, տարբերվում է բուն իմաստով ամբողջը՝ ամբողջականությունը, որն իր հատկություններով համարժեք չէ մասերին, օժտված է կառուցվածքային միասնությամբ և «վարքի» ու զարգացման ինքնուրույնությամբ. մասերը տարատեսակ են և կապված են բազմազան հարաբերություններով, դրանք կոչված են ծառայելու ամբողջին և նրանից դուրս իմաստ չունեն, ամբողջը դրանք «ենթարկում» է իրեն, կարգավորում և ուղղորդում դրանց գործունեությունը: Այս մոդելով կարող են ներկայացվել օրգանիզմները, հասարակությունը՝ որպես տնտ. և սոցիալական օրգանիզմ ևն:

Ամբողջականության կատեգորիային բացառիկ նշանակություն է տվել Ի. Կանտը՝ նպատակի վերաբերյալ իր ուսմունքում: Հեգելը դրա հետ է կապել ինքնազարգացման դիալեկտիկական գաղափարը: Հետագայի մի շարք ուսմունքներ (ռոմանտիզմ, «կյանքի փիլիսոփայություն», հոլիզմ, գեշտալդ հոգեբանություն ևն) պնդել են, թե բնագիտական՝ «մեխանիստական», «պատճառական», «վերլուծական» ճանաչողությունը կարող է ներկայացնել միայն գումարային հավաքականությունները, բայց ոչ ամբողջականությունը: Կ. Մարքսի մեծագույն ծառայություններից է հասարակական օրգանիզմի դիտարկումը որպես ամբողջականություն, որի նկատմամբ նա առաջին անգամ կիրառեց համակարգային կառուցվածքային մոտեցում:

Ներկայումս պարզ է, որ խիստ ինտուիտիվ մակարդակով առանձնացված Մ. և ա-ի հարաբերակցության տարբեր ըմբռնումները կարող են ճշգրտվել համակարգերի տեսության մեջ՝ ձևական մոդելների օգնությամբ (տես *Համակարգային մոտեցում*): Այս ճշգրտությամբ հստակ է դառնում նաև Մ. և ա-ի հարաբերակցության տարբերությունը բազմության և տարրի (տես *Բազմությունների տեսություն*), վերացականի և կոնկրետի, ընդհանուրի, հատկականի ու եզակիի ուրիշ հարակից հակասություններից:

*Գրկ.* Кант И., Критика способности суждения, Соч., т. 5, М., 1966, § 65, 77; Гегель Г., Наука логики, т. 2, М., 1971, с. 150—157; Берталанфи Л., Общая теория систем, «Системные исследования», М., 1969; Блауберг И. В., Проблема целостности в марксистской философии, М., 1963; Югай Г. А., Диалектика части и целого, Алма-Ата, 1965. *Հ. Գևորգյան*

**ՄԱՍԱԼԻՏԻՆՈՎ** Նիկոլայ Օսիպովիչ [24.2. 1880, Ելեց (այժմ՝ Լիպեցկի մարզում)—22.3.1961, Սոֆիա], թատերական գործիչ, դերասան, ռեժիսոր, մանկավարժ: ԲԺՀ ժող. արտիստ (1948): 1907—19-ին եղել է ՄԳԹ դերասան, ուր կատարելագործվել է Կ. Ս. Ստանիսլավսկու և Վ. Ի. Նեմիրովիչ-Դանչենկոյի ղեկավարությամբ: 1925-ից հաստատվել է Բուլղարիայում: Դերերից են՝ Տարտյուֆ (Մոլիերի «Տարտյուֆ»), Մատիաս Կլաուզեն (Հաուպտմանի «Արևամուտից առաջ»): 1925—44-ին՝ Սոֆիայի ժող. թատրոնի գլխավոր ռեժիսոր, այնուհետև՝ ռեժիսոր, 1925-ից գլխավորել է այդ թատրոնին կից դպրոց-ստուդիան (1948-ից՝ թատերական արվեստի բարձրագույն ինստ.): Մ. նպաստել է ռեալիզմի հաստատմանը բուլղ. բեմում: Առաջիններից էր, որ Բուլղարիայում բեմադրել է սովետական դրամատուրգների գործեր (Կատաևի «Շրջանի քառակուսի մակերեսը», 1931, Կոռնեյչուկի «Պլատոն Կրեչետ», 1940 ևն): Այլ բեմադրություններից են Օստրովսկու «Անօժիտը» (1937), Ջիդարովի «Թագավորական ողորմություն» (1948): Արժանացել է Դիմիտրովյան մրցանակի (1950):

*Գրկ.* Тихова Н., Масалитинов, София, 1959.

**ՄԱՍԱԼԻՏԻՆՈՎԱ** Վարվառա Օսիպովնա [17(29).7.1878, Ելեց —20.10.1945, Մոսկվա], ռուս սովետական դերասանուհի: ՌՍՖՍՀ ժող. արտիստուհի (1933): 1901-ին ավարտել է Մոսկվայի թատերական ուսումնարանին կից դրամատիկական դասընթացները և ընդունվել Փոքր թատրոն: 1919—20-ին եղել է Պետ. ցուցադրական թատրոնի դերասանուհի: 1922-ին վերադարձել է Փոքր թատրոն, խաղացել իր լավագույն դերերը՝ Խլյոստովա (Գրիբոյեդովի «Խելքից պատուհաս»), Դեմիդևնա (Լեոնովի «Արշավանք»), Կուկուշկինա (Ա. Օստրովսկու «Եկամտաբեր պաշտոն»): 1918-ից նկարահանվել է կինոյում: Արժանացել է ՍՍՀՄ պետ. մրցանակի (1941):

*Գրկ.* Афанасьева В., В. О. Массалитинова, М., 1951.

**ՄԱՍԱՐԻԿ** (Masaryk) Թոմաշ (1850—1937), չեխոսլովակյան պետական և քաղաքական գործիչ, փիլիսոփա: 1882—1914-ին՝ Պրագայի համալսարանի փիլիսոփայության պրոֆեսոր: «Ռեալիստների», որոնք ձգտում էին Չեխիայի ինքնավարությանը Ավստրո-Հունգարիայի կազմում, լիբերալ-քաղաքական խմբի հիմնադիրներից (1889): 1914—18-ի առաջին համաշխարհային պատերազմի նախօրեին ավստր. ռեակցիայի, հակասեմականության դեմ և այլ առաջադիմական ելույթներով ձեռք է բերել ժողովրդականություն, քանիցս ընտրվել է ավստր. պառլամենտի դեպուտատ: 1887, 1889, 1910-ին այցելել է Ռուսաստան, հանդիպել Լև Տոլստոյի հետ: 1913-ին հրատարակել է «Ռուսաստանը և Եվրոպան» գիրքը (հ. 1—2): 1914-ից վտարանդվել է: 1917—18-ին եղել է Ռուսաստանում, խրախուսել է ժամանակավոր կառավարության քաղաքականությունը: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը դիմավորել է թշնամաբար: 1918-ին Չեխոսլովակյան կորպուսի հակասովետական, հակահեղափոխական խռովության կազմակերպիչներից էր: 1918-ին վերադարձել է Պրագա, ընտրվել է Չեխոսլովակիայի Հանրապետության պրեզիդենտ: Արտաքին քաղաքականության մեջ կողմնորոշվել է դեպի արմ. իմպերիալիստական տերությունները, վարել հակասովետական կուրս: Որպես փիլիսոփա հետևել է անգլ. և ֆրանս. պոզիտիվիստներին, հանդես է եկել մարքսիզմի, հեղափոխական-բանվորական շարժման դեմ:

**ՄԱՍԵՀՅԱՆ** (Խան-Մասեհյան) Հովհաննես Տերունիի [11(23).2.1864, Թեհրան —19.11.1931, Խարբին (Չինաստան), թաղվել է Թեհրանի մոտ՝ Վանաք գյուղի Ս. Գևորգ եկեղեցու գավթում, 1963-ին նրա աճյունը տեղափոխվել է Թեհրանի Ս. Աստվածածին եկեղեցու բակը], հայ թարգմանիչ, պետական հասարակական գործիչ, մանկավարժ, հրապարակախոս, խմբագիր: Ծնվել է արքունական ոսկերչապետի ընտանիքում: Միջնակարգ կրթությունն ստացել է Թեհրանում (1870—78) և Թավրիզում (1879—81): 1884-ին ավարտել է Փարիզի ֆրանս. կոլեժը: Նույն թվականին վերադառնալով Թեհրան՝ նշանակվել է շահի պալատական թարգմանիչ, միաժամանակ ուսուցչություն արել տեղի Հայկազյան դպրոցում: 1887-ին, որպես շահի պատվիրակության ավագ թարգմանիչ, մեկնել է Լոնդոն: 1888—96-ին եղել է Հայկազյան դպրոցի տնօրենը, 1892-ին ընտրվել «Ուսումնասիրաց ընկերության» նախագահ: 1894-ին Մ. հիմնել և խմբագրել է պարսկահայ առաջին տպագիր օրգանը՝ «*Շավիղ*» շաբաթաթերթը: 1894-ին մեկնել է Պետերբուրգ՝ որպես շահի պատվիրակության թարգմանիչ, 1897-ին՝ Լոնդոն՝ որպես պատվիրակության առաջին քարտուղար: 1895—1901-ին պարսկ. արտաքին գործերի մինիստրությունում վարել է մամուլի բաժնի վարիչի, արև. երկրների բաժնի պետի, օպերատիվ տեսչի պաշտոնները՝ շարունակելով մնալ շահի թարգմանիչը:

Մեծ է Մ-ի երախտիքը պարսկ. դպրոցների հիմնադրման և ընդարձակման գործում: 1899-ին նրա նախաձեռնությամբ Թեհրանում բացվել է քաղ. գիտությունների դպրոցը, որտեղ Մ. եղել է միջազգային իրավունքի և ընդհանուր պատմության ամբիոնի վարիչը և դասախոս: 1901-ից սկսվել է Մ-ի կյանքի եվրոպական փուլը, որը նշանակալից էր ոչ միայն դիվանագիտական աշխատանքի, այլև գրական-ստեղծագործական և ազգային-հասարակական գործունեության տեսակետից: 1901-ին Մ. նշանակվել է Բեռլինում պարսկ. դեսպանի խորհրդական,



Հ. Ծ. Մասեհյան

1905-ին՝ գործերի հավատարմատար: Պարսկաստանը ներկայացրել է միջազգային մի շարք խորհրդաժողովներում՝ Բեռլինում, Փարիզում, Լոնդոնում և այլուր: 1911-ին վերադարձել է Թեհրան՝ շահի խնամակալի խորհրդականի պաշտոնով: 1912-ին նշանակվել է դեսպան Գերմանիայում: 1916-ին Լոնդոնում մասնակցել է Շեքսպիրի մահվան 300-ամյակի հանդիսություններին: Նույն թվականին մտել է Պողոս Նուբարի գլխավորած հայկ. ազգային պատվիրակության կազմի մեջ: 1927-ին նշանակվել է դեսպան Անգլիայում, 1930-ին՝ Ճապոնիայում: 1931-ի նոյեմբերին, ծանր հիվանդության պատճառով, հրաժարական է ներկայացրել: Մահացել է Տոկիոյից Թեհրան վերադառնալու ճանապարհին:

Հայ իրականության մեջ Մ. հայտնի է ամենից առաջ որպես Շեքսպիրի ամենախոշոր թարգմանիչը: Տիրապետել է պարսկ., թուրք., հուն., ֆրանս., գերմ., անգլ., ռուս. լեզուներին: Դեռևս արքունի թարգմանիչ եղած տարիներին եվրոպական մի շարք գրողներից թարգմանություններ է կատարել շահի և նրա ընտանիքի անդամների համար: 1890-ական թթ. սկզբներից ձեռնամուխ է եղել Շեքսպիրի երկերի հայերեն թարգմանությանը: 1894-ին Թիֆլիսում հրատարակել է «Համլետ»-ը: Այդ առիթով դրվատական հոդվածներ են գրել Հ. Թումանյանը, Հ. Հովհաննիսյանը, Ա. Չոպանյանը և ուրիշներ: Այնուհետև հաջորդաբար թարգմանել և հրատարակել է «Ինչպես կուզեք» (1895), «Ռոմեո և Ջուլիետ» (1896), «Վենետիկի վաճառականը» (1897), «Արքա Լիր» (1898) պիեսները: Թարգմանել է «Մակբեթ»-ը և «Փոթորիկ»-ը, բայց չի հրատարակել: Շեքսպիրին թարգմանելիս Մ. ստեղծագործական երկու շրջան է ապրել: Սկզբում այն կարծիքին է եղել, թե սրբապղծություն է «որևիցե խոտորում շեքսպիրյան «Սուրբ գրքի» բնագրի բառից ու տառից»: Տարիներ անց վերանայել է իր այդ սկզբունքը. «Գեղարվեստական թարգմանությունը շատ անգամ պահանջում է որոշ խոտորում բնագրի բառական հանդերձից՝ ոգին և իմաստն ավելի հարազատորեն տալու համար» (Շեքսպիր, «Համլետ», 1921, էջ V—VI): Այս համոզմունքով էլ Մ. նորից է թարգմանել Շեքսպիրի՝ արդեն հրատարակած և անտիպ մնացած թարգմանությունները, կատարել նոր թարգմանություններ: Վիեննայի Մխիթարյանների մոտ հրատարակել է «Համլետ»-ը (1921), «Օթելլո»-ն (1922), «Վենետիկի վաճառականը» (1922) և «Մակբեթ»-ը (1923): Ետմահու լույս են տեսել Թեհրանում՝ «Ռոմեո և Ջուլիետ» (1962), Վենետիկում՝ «Կորիոլան» (1962), «Հուլիոս Կեսար» (1962), Բեյրութում՝ «Անտոնիոս և Կլեոպատրա», «Փոթորիկ» (երկուսն էլ՝ 1967) ողբերգությունները և «Բազում աղմուկ վասն ոչնչի» (1967) կատակերգությունը: Մ. թարգմանել է նաև Գյոթեի, Բայրոնի, Օմար Խայյամի, Թագորի, Սաադիի, Շիլլերի և ուրիշների ստեղծագործություններից, որոնք տպագրվել են առանձին գրքերով, պարբերական մամուլում («Մուրճ», «Արեգ»): Մ-ի թարգմանություններին մեջ կերպարային զգացողություն կա, ողբերգականի և կատակերգականի համատեղություն, երկնային և երկրային ներդաշնակություն, լեզվական ճոխություն, երևակայության թռիչք: Մ. իր թարգմանություններով նպաստեց հայ գրական լեզվի զարգացմանը, մի կողմից ստեղծելով նոր բառեր, մյուս կողմից՝ օգտագործելով գրաբարյան բառապաշարը: Մ. թարգմանական արվեստի ճանաչված դասականներից է. նա ստեղծեց թարգմանական դպրոց, որն ունեցավ իր արժանավոր հետևորդները (Խ. Դաշտենց և ուրիշներ):

*Գրկ.* Դ ա ր ֆ ի Գ., Հովհաննես Մասեհյան, 1864—1931, մահվան 30-ամյակի առիթով, Թեհրան, 1963: Շեքսպիրական, հ. 6, Ե., 1980: Hovhaness khan Massehian (1864—1931), Tehran, 1963. *Ռ. Զարյան*

**ՄԱՍԵՅՍ**, Մ ե տ ս ե յ ս (Massys, Matsys), Քվինտեն [1465 կամ 1466—1530), նիդեռլանդացի նկարիչ: 1491-ին ընդունվել է նկարիչների անտվերպենյան գիլդիա: Կրել է *Ռոգիր վան դեր Վեյդենի*, Դ. Բաուտսի, Ա. *Դյուրերի* ազդեցությունը: Ճանաչվել է «Սուրբ Աննան Մարիամի, մանուկ Քրիստոսի և Հովհաննես Մկրտչի հետ» (1507—09, Հնագույն արվեստի թանգարան, Բրյուսել), «Ողբ առ Քրիստոս» (1508—11, Գեղեցիկ արվեստների թագավորական թանգարան, Անտվերպեն) եռանկարներով: Մի շարք նկարներում դրսևորվել է Մ-ի ծանոթությունը Լեոնարդո դա Վինչիի արվեստին («Տիրամայրը մանկան հետ», Ազգային թանգարան, Պոզնան, «Ծերունու դիմանկար», 1513, Ժակմար-Անդրե թանգարան, Փարիզ): Զգտելով պատկերել իրական կյանքը, երբեմն բախվելով ուշ գոթական ավանդույթների հետ՝ Մ. ստեղծել է ժանրային կոմպոզիցիաներ («Դրամափոխը կնոջ հետ», 1514, Լուվր, Փարիզ) և դիմանկարներ (այդ թվում՝ Էրազմ Ռոտերդամցու):



Ք. Մ ա ս ե յ ս. «Դրամափոխը կնոջ հետ» (1514, Լուվր, Փարիզ)

**ՄԱՍԵՈ** (Maceo) Անտոնիո (1845—1896), Կուբայի ազգային-ազատագրական շարժման գործիչներից: Ծնվել է գյուղացու ընտանիքում: 1868—78-ին Իսպանիայի դեմ անկախության պատերազմի ժամանակ մտել է Ազատագրական բանակի մեջ, 1878-ին ստացել գեներալ-մայորի աստիճան: Պատերազմից հետո գտնվել է տարագրության մեջ Ամերիկայի տարբեր երկրներում՝ նախապատրաստելով նոր ապստամբություն Կուբայում: 1895-ի ապրիլին վերադարձել է Կուբա և գլխավորել Օրիենտե նահանգի ապստամբական ուժերը, սեպտեմբերին դարձել է Ազատագրական բանակի գլխ. հրամանատարի տեղակալ: Զոհվել է մարտում:

**ՄԱՍԵՐՈՒ** (Maseru), Լեսոթոյի մայրաքաղաքը: Մինչև 1966-ը Բասուտոլենդ բրիտ. պրոտեկտորատի վարչական կենտրոնն էր: 30 հզ. բն. (1978): Ավտոճանապարհների հանգույց է, առևտրակենտրոն: Կան սննդարդյունաբերության ձեռնարկություններ: Ունի օդանավակայան: Հարավ-Աֆրիկյան Հանրապետության ոսկու արդ. շրջանների բանվորական ուժի հավաքագրման կայան է: Հիմնադրվել է 1869-ին:

**ՄԱՍԻԿՅԱՆ** Պարույր Զաքարիայի (ծն. 1914, Ադանա), հայ գրող: 1920-ից ապրում է Կահիրեում: Սկզբնական կրթությունն ստացել է Պերպերյան վարժարանում: 1936-ին ավարտել է Փարիզի համալսարանի իրավաբանության ու նոտարագիտության և Բրյուսելի համալսարանի գրականության ու փիլ. ֆակուլտետները: Հրատարակվել են Մ-ի «Մեր կյանքը» (1946), «Կոտրած խաչեր» (1959) և «Տեղատարափ» (1962) երգիծական ժողովածուները: Վերջինիս մեջ զետեղված են նաև հեղինակի «Թոռնիկս», «Խաչը», «Միլիոնը», «Աղջիկտես» պիեսները: Մ-ի «Էրզրումի կլոր պարը» օպերետը բեմադրվել է Կահիրեում, Նյու Յորքում և այլուր: *Ա. Ծափուղյան*

**ՄԱՍԻՆՈ** Բորիս Գրիգորևիչ (1889—1957), սովետական հեյմինթոլոգ: Կ. Ի. *Սկրյաբինի* աշակերտը: Պրոֆեսոր (1928): Երևանի անասնաբուժական-անասնաբուծական ինստ-ի հիմնադիրներից: Ավարտել է Կազանի անասնաբուժական ինստ-ը (1915): 1915—28-ին եղել է նույն ինստ-ի մակաբուծաբանության ամբիոնի վարիչ: 1928—39-ին՝ Երևանի անասնաբուժական-անասնաբուծական ինստ-ի դիրեկտոր և միաժամանակ մակաբուծաբանության ամբիոնի վարիչ: 1938-ից՝ Լենինգրադի անասնաբույժների կատարելագործման ինստ-ի դիրեկտոր և մակաբուծաբանության ամբիոնի պրոֆեսոր: Գիտական աշխատանքները նվիրված են մակաբուծական հիվանդությունների (մասնավորապես ՀՍՍՀ-ում տարածված) պատճառագիտության, բուժման և կանխարգելման հարցերին:

**ՄԱՍԻՍ** Մ ե ծ և Փ ո ք ր, Հայկական լեռնաշխարհի ամենաբարձր գագաթը (5165 *մ*): Հնում Մեծ Մ. կոչվել է Ազատ Մ., ի տարբերություն նրա կողքին

գտնվող Փոքր Մասիսի (3925 *մ*), որը ժողովուրդը կոչում է Սիս: Մ. անունը տարածված է եղել հնագույն ժամանակներից: Հուն. և հռոմ. հեղինակները Հայաստանի լեռնապարերը սովորաբար անվանում են Masius, Masion: Նեխ-Մասիք է կոչվել Սիփանա սարը: Օտարները Մասիսն անվանում են *Արարատ*, որ կապված է ջրհեղեղի ավանդության հետ: Այս անվան հնագույն հիշատակությունը պահպանվել է ասորեստանյան թագավոր Սարգոն Բ-ի արձանագրություններից մեկում, որը թվագրվում է մ. թ. ա. 713 թվականով, Arartu ձևով: Այսպես էր կոչվում այն ժամանակ Մոսուլից հս. գտնվող Ջուդի-դաղ լեռը, որի հետ է կապում մինչև օրս ջրհեղեղի ավանդությունը շրջակա ազգաբնակչությունը: Արարտու կամ Ուրարտու էր կոչվում ասորեստանցիների մոտ նրանից հս. գտնվող Վանի թագավորությունը: Իսկ նրանց ժամանակակից եբրայեցիները Ուրարտուի թագավորությունը, ինչպես և Մասիս սարը, կոչում էին Արարատ (Arartu): Աստվածաշնչում Ուրարտուի թագավորությունը կոչվում էր Այրարատյան թագավորություն: Մ. թ. առաջին դարերում Հին Ուխտի քրիստոնյա մեկնաբանները ջրհեղեղի ավանդության Նոյի տապանի Արարատ գագաթը նույնացրին Մասիսի հետ, և այնուհետև քրիստոնյա աշխարհը, ապա ամբողջ աշխարհը, Մասիս սարը գիտի Արարատ անվան տակ: Հայերը ևս գրականության մեջ հաճախ այդ անունով են կոչում Մասիսը: Արարատ-Մասիսի հս-արլ. փեշերին փռված տարածքը իբրև առանձին գավառ կոչվում է Մասյացոտն կամ Ոտն Մասյաց: Այս գագաթի անվան հետ է կապվում Մեծ Հայքի թագավորության սիրտը հանդիսացող «Այրարատ» նահանգի անունը, որ հին Ուրարտուի անվան հիշատակն է: Այնուհետև Արարատ-Մասիսը դառնում է հայկ. պետականության խորհրդանիշ և պատահական չէ, որ այն պատկերված է Սովետական Հայաստանի զերբի վրա:

*Մ. Երեմյան*

**ՄԱՍԻՍ**, հայկական հեթանոսական տոմարի ամիսների 18-րդ օրվա անունը:

**ՄԱՍԻՍ** (1953—69-ին՝ Հ ր ա զ դ ա ն), քաղաքատիպ ավան (1971-ից), Հայկական ՍՍՀ *Մասիսի շրջանի* վարչական կենտրոնը: Գտնվում է Արարատյան հարթավայրում, Հրազդան գետի ստորին հոսանքի ձախ ափին: Երկաթուղային կայարան է Թբիլիսի—Երևան երկաթուղու վրա: Մ-ի սովետական տնտեսությունն զբաղվում է բանջարաբուծությամբ, այգեգործությամբ և անասնապահությամբ: Մ-ում կան ատաղձագործական իրերի, կենցաղսպասարկման կոմբինատներ, «Հայբնագույնքարեր» արտադրական միավորում, պահածոների, մեխանիկական նորոգման գործարաններ, Ա. Մյասնիկյանի անվ. կահույքի ֆաբրիկայի, «Հայգորգ» միավորման, Երևանի թղթի-ստվարաթղթի ֆաբրիկայի մասնաճյուղեր, Փարաքարի գինու գործարանի հումքի ընդունման կետ, «Հայգյուղտեխնիկա» շրջանային բաժանմունքը, ոռոգման համակարգի վարչություն, ճանապարհաշինարարական տեղամաս, գազի գրասենյակ, տպարան: 1981—1982 ուս. տարում Մ-ում կային 6 միջնակարգ (1-ը հեռակա), երաժշտական, սպորտդպրոցներ, պրոֆտեխնիկական ուսումնարան, 3 մսուր-մանկապարտեզ: Մ-ում կան (1981) կուլտուրայի տուն, 2 ակումբ, 3 գրադարան (1-ը՝ մանկական), կապի հանգույց, կինոսարքավորում: Գործում են շրջանային հիվանդանոցը, ծննդատունը, պոլիկլինիկան, դեղատունը, 2 բուժ. առողջապահական, շտապօգնության և սանիտարահակահամաճարակային կայաններ: Մ-ում են գտնվում ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի նյութատեխնիկական և նավթամթերքների մատակարարման գլխավոր վարչությունների բազաները, արտասահմանից վերադարձող հայերի ընդունման և տեղավորման կոմիտեի Մ-ի ընդունման կայանը:

*Բ. Ղուկասյան*

Բնակելի թաղամաս Մասիս ավանում





Արհեստական լիճ Մասիս քաղաքատիպ ավանում

**ՄԱՍԻՍ**, գյուղ Հայկական ՍՍՀ Արտաշատի շրջանում, Երևան—Արտաշատ խճուղու վրա, շրջկենտրոնից 7 *կմ* հյուսիս-արևմուտք: Կոլտնտեսությունն զբաղվում է սերմնաբուծությամբ (1941-ից բանջարաբոստանային կուլտուրաների սերմնաբուծական տնտեսություն), խաղողագործությամբ, պտղաբուծությամբ, բանջարաբոստանային կուլտուրաների մշակությամբ և անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կապի բաժանմունք, կինո, մանկապարտեզ բուժկայան:



Մասիս

**«ՄԱՍԻՍ»**, քաղաքական, տնտեսական, գրական և բանասիրական օրաթերթ, շաբաթաթերթ, ամսաթերթ: Լույս է տեսել 1852—1908-ին, Կ. Պոլսում: Խմբագիրներ՝ Կ. Ութուճյան, Ա. Արփիարյան, Գ. Զոհրապ, Հ. Ասատուր, Մ. Շամտանճյան, Տ. Արփիարյան, Ե. Արմեն: Սկզբում ունեցել է չափավոր ուղղություն, հաշտվողական դիրք գրավել թուրք. կառավարության, հայ հոգևորականության և հարուստ դասի նկատմամբ: Ա. Արփիարյանի և Գ. Զոհրապի խմբագրության տարիներին (1884—93) ձեռք է բերել շեշտված դեմոկրատական ուղղություն, արձագանքել հայ ժողովրդին հուզող քաղ. և տնտ. խնդիրներին, քննադատել սուլթանական կառավարության և նրան աջակցող օտար պետությունների հայահալած քաղաքականությունը, լայն տեղ հատկացրել գրական-քննադատական նյութերին, համախմբել արևմտահայ ռեալիստական արձակի գրեթե բոլոր ներկայացուցիչներին: Թարգմանաբար ներկայացրել է նաև ռուս. և եվրոպական գրականությունը (Պուշկին, Լերմոնտով, Ա. Դյումա, Հյուգո և ուրիշներ): Դարավերջին, համիդյան կոտորածների և քաղ. ներքին կացության խստագույն պայմաններում «Մ.», հեռանալով


ՄԱՍԻՍ
ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ԱԶԳԱՅԻՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ
ՊԱՐՈՒՆԱԿՈՒԹԻՒՆ

ավանդույթներից, հիմնականում տպագրել է մանր լուրեր, գիտական կարճառոտ հոդվածներ, տեղեկություններ ևն: Տարբեր տարիների պարբերականին աշխատակցել են Հ. Պարոնյանը, Տ. Կամսարականը, Լ. Բաշալյանը, Ե. Օտյանը, Մ. Աճեմյանը, Վ. Մալեզյանը, Սիպիլը, Ա. Չոպանյանը, Ա. Հարությունյանը, Ե. Տեմիրճիպաշյանը, Ալփասլանը (Ա. Փանոսյան) և ուրիշներ:

*Գ. Ստեփանյան*

**«ՄԱՍԻՍ»**, կրոնական ազգային, քաղաքական, գրական, հասարակական շաբաթաթերթ: Կիլիկիո Տան հայ կաթողիկե պատրիարքության հրատարակություն: Լույս է տեսնում 1947-ից, Բեյրութում: Խմբագիր՝ Հ. Քաջարենց: Ելնելով պապականության շահերից՝ ձգտում է հեղինակազրկել Հայ Առաքելական եկեղեցին, մերժում է նրա ավանդույթները, միջազգային կյանքը լուսաբանում բուրժ. մամուլի ու գործակալությունների տվյալներով, հաճախ՝ հակակոմունիստական դիրքերից: Քարոզում է հայ քաղ. կուսակցությունների համերաշխություն: Մեծ տեղ է հատկացնում սփյուռքահայ գաղթօջախների, հայրենիքի, ինչպես նաև Մխիթարյան միաբանության կրթական, մշակութային ու կրոնական կյանքին: Հոդվածներ է տպագրել Սիամանթոյի, Դ. Վարուժանի, Մ. Մեծարենցի, Սայաթ-Նովայի, Ա. Իսահակյանի, Պ. Սևակի, Դ. Դեմիրճյանի, Սարմենի, Ա. Վշտունու, Գ. Էմինի և այլոց մասին, զետեղել այդ հեղինակների, ինչպես նաև ֆրանս., իտալ. և եվրոպական այլ գրողների ստեղծագործություններ: Ունի նաև բժշկ. բաժին:

*Գ. Գույումջյան*

**«ՄԱՍԻՍ» ՍՈՎԽՈԶԻՆ ԿԻՑ ԱՎԱՆ**, (1978-ից՝ Դարակերտ), գյուղ Հայկական ՍՍՀ Մասիսի շրջանում, շրջկենտրոնից 7 *կմ* հյուսիս-արևմուտք: Սովետական տըն-

տեսությունն զբաղվում է պտղաբուծությամբ, բանջարաբոստանային կուլտուրաների մշակությամբ, անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կինո, կապի բաժանմունք, մանկապարտեզ, բուժկայան: Ավանում է ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության բանջարաբոստանային կուլտուրաների սելեկցիոն սերմնաբուծական կայանը:

**ՄԱՍԻՍԻ ՇՐՋԱՆ** (1937—53-ը՝ Զանգիբասարի շրջան), վարչական շրջան Հայկական ՍՍՀ-ում: Առաջին անգամ կազմվել է 1937-ի դեկտ. 1-ին: 1953-ի մարտին լուծարքի է ենթարկվել: Վերակազմվել է 1969-ի հունվ. 14-ին՝ Էջմիածնի, Արտաշատի և Երևան քաղաքի Լենինյան ու Շահումյան շրջանների նախկին տերիտորիաներից: Հվ-արմ-ում սահմանակից է Թուրքիային: Տարածությունը 170 *կմ²* է, բնակչությունը՝ 55300 (1979), վարչական կենտրոնը՝ *Մասիս* քաղ:

Քարտեզը տես 352-րդ էջից հետո՝ ներդիրում:

Բնական պայմանները: Մ. շ. գտնվում է Արարատյան դաշտի կենտրոնական մասում, Հրազդանի ստորին հոսանքի ավազանում: Մակերևույթը հարթավայրային է, միջին բարձրությունը՝ 800 *մ*: Գտնվում է 7—9-բալանոց սեյսմիկ գոտում: Կան մարմարի (Մարմարաշեն), ավազի (Ռանչպար), կավի (Այնթապ) հանքավայրեր: Կլիման չոր ցամաքային է: Տարեկան միջին ջերմաստիճանը 8—12°C է, առավելագույնը՝ 42°C, նվազագույնը՝ —30°C, տարեկան տեղումները՝ 250—300 *մմ* (առավելագույնը՝ ապրիլ—մայիսին): Շրջանի տերիտորիայով հոսում է Հրազդան գետը, հվ-ում, պետ. սահմանի երկարությամբ՝ Արաքսը: Կան արհեստական լճեր (Սարվանլարում): Բնական լանդշաֆտը կիսաանապատային է՝ անապատային տեղամասերով: Տիրապետում են բաց շագանակագույն, գորշ, ալկալի, տեղ-տեղ՝ աղակալած կիսաանապատային հողերը: Բնորոշ բուսատեսակներն են՝ օշինդրը, անթառամը, օշանը, հավամրգին են: Կենդանիներից տարածված են սողուններն ու կրծողները: Շատ են թռչունները:

Բնակչությունը: Մ. շ. հանրապետության խիտ բնակեցված շրջաններից է, միջին խտությունը 1 *կմ²* վրա՝ 325 մարդ: Բնակվում են հայեր (70%), ադրբեջանցիներ, ռուսներ, քրդեր: Ունի 26 բնակավայր (այդ թվում՝ 2 քաղ՝ Մասիս, Նոր Խարբերդ), 2 ավանային, 9 գյուղական սովետ:

Պատմական ակնարկ: Հին և միջին դարերում Մ. շ-ի տարածքը մտնում էր Մեծ Հայքի Այրարատ նահանգի Արագածոտն և Կոտայք գավառների մեջ: Արշակունիների թագավորության շրջանում արքունի սեփականություն էր: 428—640-ին եղել է Մարզպանական Հայաստանի կազմում, այնուհետև այն գրավել են արաբները: 885-ից մտել է հայ Բագրատունիների թագավորության կազմի մեջ, XI դ. կեսից տիրել են սելջուկ-թուրքերը, XII դ. վերջին և XIII դ. սկզբին՝ Զաքարյանները: 1230-ական թթ. Մ. շ-ի տարածքը գրավել են մոնղոլ-թաթարները: XVI դ. մտել է Իրանի Չուխուր-Սաադ վարչական միավորի, XVIII դ. կեսից՝ Երևանի խանության կազմի մեջ: Մ. շ-ի տարածքի բնակչությունը հատկապես տուժել է 1604-ին, Իրանի շահ Աբբաս I-ի կազմակերպած բռնագաղթից: 1827-ին շրջանի տարածքը


Տեսարան Կալինինի անվ. ավանից

միացվեց Ռուսաստանին և կազմեց Երևանի նահանգի մասը, որի կազմում մնաց մինչև ՀՍՍՀ նոր վարչատերիտորիալ բաժանումը: Մ. շ-ի կուսակցական կազմակերպությունը 1969—81-ին ունեցել է 6 կոնֆերանս (վերջինը՝ 1980-ին): 1981-ին շրջանում կար 122 սկզբնական կազմակերպություն՝ 2173 կոմունիստով և 140 ՀԼԿԵՄ կազմակերպություն՝ 8363 կոմերիտականով:

Տնտեսությունը: Մ. շ. գյուղատնտ-արդ. շրջան է, սակայն զարգացող արդյունաբերությունը համախառն արտադրանքի արժեքով գերազանցում է գյուղատնտեսության համախառն արտադրանքի արժեքը: Արդ. ձեռնարկություններում աշխատում են ավելի քան 2450 բանվորներ ու ծառայողներ: Արդ. հիմնական ձեռնարկություններն են Նոր Խարբերդի ոչ գործվածքային կտորեղենի, Այնթապի ժանյակի ֆաբրիկաները, «Հայբնագույնքարեր» արտադրական միավորումը, ատաղձագործական իրերի կոմբինատը (Մասիսում), Մասիսի պահածոների գործարանը (տարեկան արտադրանքը 33,2 մլն պայմանական տուփ, 1981), Երևանի թղթի-ստվարաթղթի գործարանի Մասիսի մասնաճյուղը, դիատոմիտների գործարանը, ԴՕՍԱԱՖ-ի արտադրական կոմբինատը (Նոր Խարբերդում), Մասիսի ձկան կոմբինատը (Սարվանլարում), «Հայգյուղտեխնիկա»-ի շրջանային բաժանմունքը և «Հայգյուղտեխնիկա» միավորման կենտրոնական բազան (Մասիսում), Հայկոոպի հանրապետական արդ. միավորման Մասիսի տարայի ֆաբրիկան, մեխանիկական վերանորոգման գործարանը, տպարանը (Մասիսում):

Այնթապի թռչնաբուծական փորձարարական բազայում



Մ. շ-ում են գտնվում ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի նյութատեխնիկական մատակարարման գլխավոր վարչության բազաները («Հայանտառթուղթմատառ», «Հայէլեկտրամեքմատ», «Հայշինմատված», «Հայքիմմատառ»), նավթամթերքների մատակարարման գլխավոր վարչության Մասիսի նավթաբազան:

Մ. շ. մտնում է Երևանի քաղաքամերձ գյուղատնտ. գոտու մեջ: Շրջանում կա 19 սովետական, 5 կոլեկտիվ տնտեսություն: Գյուղատնտեսության առաջատար ճյուղերն են բանջարաբուծությունը (տարեկան արտադրանքը 50—55 հզ. *տ*), խաղողագործությունն ու պտղաբուծությունը: Կարևոր նշանակություն ունեն նաև կարտոֆիլի ու հացահատիկի մշակումը: Շրջանում մեծ աշխատանքներ են կատարվում աղուտային հողերը գյուղատնտ. օգտագործման հանձնելու համար: Ընդլայնվում են ոռոգվող հողատարածությունները (4326 *հա*, 1981): Ոռոգման համար օգտագործվում են Հրազդան գետի և արտեզյան ջրհորների ջրերը (ընդհանուր ծախսը 6—8 *մ³/վրկ*): Գյուղատնտ. նպատակներով օգտագործվող հողային ֆոնդը 9159 *հա* է (1981), որից 5174 *հա* վարելահող (այդ թվում՝ 1500 *հա* բանջարանոցային կուլտուրաներ, 2498 *հա* կերային կուլտուրաներ), 1226 *հա* բազմամյա տնկարկներ (823 *հա* խաղողի այգի, 329 *հա* պտղատու այգի, 44 *հա* պտղատնկարան), 451 *հա* խոտհարք, 1287 *հա* արոտավայր, 1053 *հա* անձնական օգտագործման տնամերձ հողեր, 96 *հա* դաշտապաշտպան անտառաշերտեր ու անտառներ: Մասիսում ու Նոր Խարբերդում կան ջերմոցային տնտեսություններ: Շրջանի տնտեսության կարևոր ճյուղերից են նաև տավարաբուծությունն (8000 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, Դարակերտ, Այնթապ, Ղուկասավան) ու թռչնաբուծությունը (Այնթապ, Նոր Խարբերդ, Հովտաշատ, Դստալուգ, 47 հզ. թռչուն): Կալինինի անվ. ավանում և Հովտաշատում կա կաթնաանասնապահական համալիր, Սարվանլարում՝ ձկնաբուծական տնտեսություն: Գյուղատնտեսության բնագավառում աշխատում են բարձրագույն կրթությամբ ավելի քան 100 մասնագետ: Մ. շ-ի տարածքով անցնում է Թբիլիսի—Երևան երկաթուղու 10 *կմ* հատվածը: Բնակավայրերը խճուղային ճանապարհներով կապվում են շրջկենտրոնի և Երևանի հետ, ռադիոֆիկացված են, օգտվում են հեռուստատեսային հաղորդումներից: Շրջանում կա կապի հանգույց (Մասիսում), 19 կապի բաժանմունք:

Առողջապահությունը: Մ. շ-ում գործում է բուժմիավորում (95 բժիշկ, 436 միջին և կրտսեր բուժաշխատող, 1981): Կա հիվանդանոց (320 մահճակալով), պոլիկլինիկա, ծննդատուն, 13 բուժմանկաբարձական կետ, 3 դեղատուն, շտապ բժշկ. օգնության և սանիտարահակահամաճարակային կայաններ, 4 առկայան, զառամյալների տուն ինտերնատ (Նոր Խարբերդում):

Մշակույթը: 1981/82 ուս. տարում շրջանում կար 29 միջնակարգ (1-ը՝ հեռակա), 2 ութամյա դպրոց (13415 աշակերտ, 1179 ուսուցիչ, այդ թվում՝ 926-ը բարձրագույն կրթությամբ): 1981-ին Մ. շ-ում գոր-

ծում էին 3 երաժշտական (Մասիսում, Նոր Խարբերդում, Արբաթում), 1 մարզական, 1 գեղարվեստի դպրոց, մեկ պրոֆ-տեխ. ուսումնարան (Մասիսում), 1 սովխոզ տեխնիկում (աղբբ., Դեմուրչիում), 26 մսուր-մանկապարտեզ: Կա 26 գրադարան, 20 ակումբ, 12 կուլտուրայի տուն, 21 ստացիոնար կինոսարք: Ղուկասավանում գործում է Ղ. Ղուկասյանի անվ. Հայաստանի կոմերիտմիության պատմության թանգարանը: Մ. շ-ում է ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության բանջարաբոստանային կուլտուրաների սելեկցիոն սերմնաբուծական կայանը (Դարակերտում), ԳԱ ֆիզիոլոգիայի ինստ-ի ինկուբացիոն թռչնաբուծական կայանը (Նոր Խարբերդում), արտասահմանից վերադարձող հայերի ընդունման ու տեղավորման կոմիտեի Մասիսի ընդունման կայանը: 1969-ից լույս է տեսնում *«Նոր ուղի»* շրջանային թերթը: Մ. շ-ի բնակավայրերն են՝ Ազատաշեն, Այնթապ, Արբաթ, Արգավանդ, Արևաբույր, Գեղանիստ, Գետափնյա, Դաշտավան, Դարակերտ, Դեմուրչի, Դոստլուզ, Զահմեթ, Զանգիլար, Կալինինի անվ. ավան, Հովտաշատ, Ղուկասավան, Մասիս, Մարմարաշեն, Նիզամի, Նորաբաց, Նոր Խարբերդ, Ջրահովիտ, Ռանչպար, Սայաթ-Նովա, Սարվանլար, Սարջալար: *Բ. Ղուկասյան*

Պատկերազարդումը տես 368—369-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակ II:

**ՄԱՍԿԱՆՅԻ** (Mascagni) Պիետրո (1863—1945), իտալացի կոմպոզիտոր: Իտալ. ակադեմիայի անդամ (1929): 1881—84-ին սովորել է Միլանի կոնսերվատորիայում՝ Ա. Պոնկիելլիի և Մ. Սալադինոյի մոտ: 1885-ից եղել է ոչ մեծ օպերային և օպերետային թատրոնների դիրիժոր: Մ-ին համաշխարհային ճանաչում է բերել «Գեղջկական պատիվ» օպերան (ըստ Ջ. Վերգիի դրամայի, 1889, բեմ. 1890), որը, ինչպես և Լեոնկավալլոյի «Պայացներ» օպերան, հիմք դրեց օպերային *վերիզմ* նոր ուղղությանը: Գրել է նաև «Վիլյամ Ռատկլիֆ» (1895, Միլան), «Զանետտո» (1896, Պեզարո), «Դիմակներ» (1901, Միլան), «Ներոն» (1935, Միլան) և այլ օպերաներ, օպերետներ, նվագախմբային երկեր, կինոերաժշտություն:

**ՄԱՍԿԱՏ**, Օմանի մայրաքաղաքը, Արաբական թերակղզու արևելյան ափին: Մոտ 85 հզ. բն. արվարձաններով (1980): Նավահանգիստ է Օմանի ծոցի ափին: Ունի օդանավակայան: Կարավանային ճանապարհների հանգույց է: Արտահանվում են արմավ, մրգեր, չորացրած ձուկ: Կա արհեստագործություն:

**ՄԱՍԿԱՐԵՆՅԱՆ ԿՂԶԻՆԵՐ** (անգլ. Mascarene Islands), կղզիների խումբ Հնդկական օվկիանոսում, Մադագասկար կղզուց արևելք: Բաղկացած են Ռեյունիոն (ֆրանս. տիրույթ), Ռոդրիգես և Մավրիկիոս (պատկանում է Մավրիկիային) կղզիներից: Կազմված է հրաբխային ապարներից, բարձրությունը՝ մինչև 3069 *մ*: Կան գործող հրաբուխներ: Կլիման արևադարձային է, պասսատային, հողմակողմ լանջերին տարածված են մշտականաչ արևադարձային անտառներ, հողմատակ լանջերին՝ սավաններ: Կան շաքարեղեգի, կոկոսյան արմավենու, թեյի, հալվեի, սուրճի, վանիլի պլանտացիաներ: Հայտնաբերել է պորտուգալացի Պեդրու դը Մասկարենիասը՝ 1507-ին:

**ՄԱՍԿԱՐՈՆ** (ֆրանս. mascaron, < իտալ. mascherone — մեծ դիմակ), դիմակ, մարդու դեմքի և կենդանու գլխի տեսքով դեկորատիվ ռելիեֆ: Մ-ները առավելապես տեղադրվում են պալատների կամարակողպեքներին, լուսամուտների և դռների բացվածքների վերևում, շատրվանների ցայտիչների, ինչպես և կահույքի ու անոթների վրա:



Մասկարոն Երևանի Սպենդիարյանի անվ. օպերայի և բալետի թատրոնի որմնախոյակին (1953, քանդակագործ՝ Ս. Ստեփանյան)

**ՄԱՍԿՈՒԼԻՆԻԶԱՑԻԱ** (< լատ. masculinus — արական), ա ր ա կ ա ն ա ց ու մ, էգ կենդանիների կամ կանանց օրգանիզմում արական սեռին հատուկ հատկանիշների առաջացումը: Կանանց Մ-ի բնորոշ ձևերը պայմանավորված են պտղի մակերիկամների կեղևի անդրոգենային բնածին գերֆունկցիայով և գլյուկոկորտիկոստերոիդ հորմոնների (հատկապես կորտիզոլի) անբավարարությամբ (այսպես կոչված, ադրենոգենիտալ սինդրոմ): Անդրոգեն հորմոնների ազդեցության ներքո պտղի արտաքին սեռական օրգանները զարգանում են արական տիպի, ներքին սեռական օրգանները (արգանդ, ձվարան) ետաճում են (կեղծ *հերմաֆրոդիտիզմ*): Երբեմն այս ձևը կարող է դրսևորվել ավելի ուշ՝ պատանեկան, երիտասարդական շրջանում. դեմքը մազակալում է՝ ձայնը կոպտանում, դաշտանային ցիկլը խանգարվում: Մ. կարող է զարգանալ նաև ձվարանների կամ մակերիկամների անդրոգեն հորմոններ արտադրող ուռուցքների դեպքում, ինչպես նաև կանանց սեռական օրգանների (հատկապես արգանդի) և կրծքագեղձի ուռուցքների ու դրանց մետաստազների տարածումը կանխելու նպատակով արական հորմոնների (տեստոստերոն) տևական օգտագործումից:

Բ ու ժ ու մ ը. հորմոնային պատրաստուկներ՝ հիմնականում գլյուկոկորտիկոիդներ: *Պ. Վարդապետյան*

**«ՄԱՍՅԱՑ ԱՂԱՎՆԻ»**, ամսագիր («Ավետաբեր Հայաստանեայց» ենթավերնագրով): Լույս է տեսել 1855—58, Փարիզում, 1860—65-ին՝ Թեոդոսիայում հայերեն և ֆրանս.: Խմբագիր-հրատարակիչ՝ Գ. *Այվազովսկի*: Նպատակն էր ծանոթացնել եվրոպական քաղաքակրթության և գիտության նվաճումներին, սեր առաջացնել արվեստների ու արհեստների հանդեպ, նպաստել ժողովրդի բարոյական դաստիարակությանը: Կարևոր նշանակություն է տվել կրթությանն ու գիտությանը, տպագրել գիտամասսայական զրույցներ, մանկավարժական ու պատմական բնույթի հոդվածներ են:



ՄԱՍԵԱՑ ԱՂԱՒՆԻ

ԱՒԵՏԱԲԵՐ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

Հանդեսի գրական բաժնում տեղ են գտել Մ. Պեշիկթաշլյանի, Խ. Գալֆայանի, Մ. Պալյանի, Լաֆոնտենի, Լամարթինի, Բայրոնի, Դերժավինի, Լոմոնոսովի, Լերմոնտովի ստեղծագործությունները: Խմբագրի թարգմանությամբ ընթերցողին են հասել Ի. Կռիլովի բազմաթիվ առակները: «Մ. ա.» որպես կղերա-ֆեոդ. հոսանքի գաղափարակիր պայքարել է *«Հյուսիսափայլի»* և նրա հրատարակիչների (Ս. Նազարյան, Մ. Նալբանդյան) դեմ: 1860-ից լույս է տեսել «Մասյաց աղավնի և Ծիածան Հայաստանյայց» անվամբ, ունեցել է «Радуга» («Ծիածան») ռուս. հավելվածը: *Ս. Մխիթարյան*

**ՄԱՍՅԱՑՈՏՆ**, Ո տ ն Մ ա ս ե ա ց, գավառ Մեծ Հայքի Այրարատ նահանգում, Մեծ և Փոքր Մասիսների հյուսիսային և արևելյան ստորոտներին: Արմ-ից սահմանակից է Ճակատք, հվ-արլ-ից՝ Արտազ գավառներին, հվ-արմ-ից Հայկական լեռնապարով բաժանվում էր Կոգովիտ գավառից, հս-ից և արլ-ից Երասխ գետով սահմանակցվում էր Արագածոտն, Կոտայք, Ոստան և Շարուր գավառներին: Մակերևույթը լեռնադաշտային է, կլիման՝ ցամաքային: Մ-ի գետակներից են Սև ջուրը (սկզբնավորվում է Մասիսի հս. ստորոտից), Տամբատը (սկզբնավորվում է Մասյաց թիկունքից) և Գին (սկիզբ է առնում Մասսի ձյունոտ լանջերից և Ս. Հակոբա աղբյուրից), որոնք միախառնվում են Երասխին: Մ. հռչակված էր որդան կարմիր ներկով, հարուստ բուսականությամբ, մրգատու ծառերով (խնձորենի, տանձենի, կեռասենի, ծիրանենի, դեղձենի, ընկուզենի), բազմազան վայրի հավքերով ու կենդանիներով: Հնում եղել է արքունի տիրույթ և հայ թագավորների որսատեղի: IX—XI դդ. պատկանել է Բագրատունիներին, XII—XIII դդ.՝ Զաքարյաններին: XVI—XIX դդ. մտել է Երևանի խանության Սուրմալու մահալի, իսկ 1850-ից՝ Երևանի նահանգի Սուրմալու գավառի մեջ: Առաջին համաշխարհային պատերազմից հետո անցել է Թուրքիայի տիրապետության տակ:

Մ-ի հնագույն բնակավայրերից հիշատակվում են Ակոռին, Փառախոտը, Ցոլակերտը, Տամբատը, Ոսկիոդան, Դաժգույնքը, Վարազկերտը, Կոռակը, Ուղյացը: XX դ. սկզբին Մ-ում կար ավելի քան 30 բնակավայր (մեծ մասամբ թուրք. և պարսկ. անվանումներով), որոնցից նշանավոր էին Մուսա-Կետիկը, Նոր Ակոռին, Որկովը, Դաշբուռունը (Քարաբիթ) են:

*Գրկ.* Ա լ ի շ ա ն Ղ., Այրարատ, Վնտ., 1890: Ե ր ե մ յ ա ն Ս. Տ., Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, Ե., 1963: Հ ա կ ո բ յ ա ն Թ. Խ., Հայաստանի պատմական աշխարհագրություն, Ե., 1968: *Թ. Հակոբյան*

**ՄԱՍՆԱԳԻՏԱԿԱՆ ԿՈՂՄՆՈՐՈՇՈՒՄ**, գիտականորեն հիմնավորված միջոցառումների համակարգ, որը երիտասարդությանը նախապատրաստում է մասնագիտություն ընտրելու և աշխատանքի տեղավորվելու գործում, նպաստում անձի բազմակողմանի զարգացմանը, կարողությունների բացահայտմանը: Մ. կ-ման աշխատանքները ղեկավարում են ժողկրթության, պրոֆտեխնիկական կրթության և աշխատանքային ռեսուրսները տնօրինող մարմինները: ՍՍՀՄ հանրապետություններում, երկրամասերում ու մարզերում, շրջաններում ու քաղաքներում գործում են Մ. կ-ման միջգերատեսչական խորհուրդներ: Խոշոր կապիտալիստական երկրներում Մ. կ. բուրժ. պետության գործունեության միջոց է՝ կապիտալիստական արտադրության շահերի տեսանկյունով երիտասարդ կադրերի տեղաբաշխման և նրանց վրա գաղափարական ներգործության բնագավառում:

**ՄԱՍՆԱԳԻՏԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅՈՒՆ**, դասակարգված գիտությունների և գործնական հմտությունների հանրագումար, որն անհրաժեշտ է ըստ մասնագիտության որակավոր աշխատանք կատարելու համար: Տես *Պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթություն*, *Հատուկ-միջնակարգ կրթություն*, *Միջնակարգ մասնագիտական կրթություն*, *Բարձրագույն կրթություն*:

**ՄԱՍՆԱԳԻՏԱԿԱՆ ՀԱՇՎՈՂԱԿԱՆ ՄԵՔԵՆԱ** թ վ ա ն շ ա ն ա յ ի ն, նախատեսված է որոշակի դասի խնդիրների լուծման համար: Ունիվերսալ *թվանշանային հաշվողական մեքենաներից* (ԹՀՄ) ավելի պարզ է և էժան, սակայն ունի տրամաբանական և հաշվողական հնարավորությունների ավելի նեղ շրջանակ: Առավել տարածված են կառավարող (տարբեր իրական օբյեկտների և պրոցեսների կառավարման համակարգի մեջ մտնող), որոշակի դասի մաթ. խնդիրների (զույգ արտադրյալների գումարների հաշվում, սովորական դիֆերենցիալ հավասարումների համակարգերի լուծում ևն) լուծման, ինֆորմացիոն-որոնող (տառա-թվանշանային մեծ ծավալի ինֆորմացիայի մեծ զանգվածների մշակման համար) մեքենաներ: Մ. հ. մ-ները կարող են արդյունավետ օգտագործվել նաև ունիվերսալ ԹՀՄ-ների հետ մեկտեղ, օրինակ, ինֆորմացիայի նախապատրաստման և մշակման մասնակի խնդիրների, ինչպես նաև տարբեր պրոցեսների մոդելավորման խնդիրների լուծման համար:

**ՄԱՍՆԱԳԻՏԱՑՈՒՄ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ**, աշխատանքի հասարակական բաժանման ձև. արտահայտվում է արտադրության գործող ճյուղերի տրոհմամբ, նորերի ձևավորմամբ, նաև ճյուղի ներսում աշխատանքի բաժանմամբ: Մ. ա. խորացման կարևորագույն գործոններն են գիտատեխ. առաջընթացն ու արտադրության մասշտաբների ընդլայնումը: Այն զարգանում է հատուկ տեխնոլոգիայի ձևավորման, աշխատանքի առարկաների աճող բազմազանության, արտադրանքի տեսականու ավելացման ու դրանց ստանդարտացման, դետալների միատեսակացման հետ սերտ փոխազդեցության մեջ: Ա ր դ յ ո ւ ն ա բ ե ր ո ւ թ յ ա ն մեջ Մ. ա. իրականացվում է մեկ կամ մի քանի միատիպ արտադրատեսակ (առարկայական Մ. ա.), պատրաստի արտադրանքի առանձին մաս թողարկող (դետալային Մ. ա.), ինչպես նաև արտադրության առանձին պրոցեսներ և օպերացիաներ կատարող (տեխնոլոգիական Մ. ա.) առանձին ճյուղերի, միավորումների (կոմբինատների), ձեռնարկությունների ձևավորմամբ: Գ յ ո ւ ղ ա տ ն տ ե ս ո ւ թ յ ա ն մեջ Մ. ա. ընթանում է, ըստ տնտ. նշանակության՝ հիմնական, լրացուցիչ ու օժանդակ ճյուղերի և արտադրությունների, ըստ արտադրական ուղղության՝ հացահատիկային, կաթնային, մսակաթնային և այլ ուղղությունների տնտեսությունների կազմավորմամբ: Տարբերում են միջտնտ., ներտնտ., ներճյուղային, նաև նեղ (միաճյուղ) ու խորը (սահմանափակ թվով ճյուղերով) Մ. ա.: Տ ր ա ն ս պ ո ր տ ո ւ մ մասնագիտացվում են ավտոմոբիլային, երկաթուղային, ծովային ու գետային տրանսպորտով փոխադրումները: Շ ի ն ա ր ա ր ո ւ թ յ ա ն մեջ Մ. ա. արտահայտվում է նրանում, որ իր ֆունկցիաներն ավելի և ավելի սահմանափակում է շենքերի ու կառույցների մոնտաժման աշխատանքներով, իսկ շինարարական դետալների ու կոնստրուկցիաների արտադրությունը կազմակերպվում է գործարաններում: Մ. ա-յան շնորհիվ ամբողջանում է աշխատանքի գործիքների և նյութական ռեսուրսների օգտագործումը, բարձրանում աշխատողների որակավորումն ու աշխատանքի արտադրողականությունը, իջնում արտադրանքի ինքնարժեքը, աճում արտադրության շահութաբերությունը ևն:

*Գրկ.* Б е р р и Л. Я., Специализация и кооперирование в промышленности СССР, М., 1954; Сельское хозяйство СССР на современном этапе, М., 1972; Г а з а л и е в М. В., Н и к о н о в а Т. П., Планирование и экономическое стимулирование специализации промышленного производства, М., 1974.

**ՄԱՍՆԱԿԱՆ ԱԾԱՆՑՅԱԼ**, մ ա ս ն ա կ ի ա ծ ա ն ց յ ա լ, տես *Դիֆերենցիալ հաշիվ*:

**ՄԱՍՆԱԿԱՆ ԱԾԱՆՑՅԱԼՆԵՐՈՎ ՀԱՎԱՍԱՐՈՒՄՆԵՐ**, հավասարումներ, որոնցում անհայտը մի քանի փոփոխականի ֆունկցիա է, ընդ որում՝ այդ հավասարումը, բացի անհայտ ֆունկցիայից, պարունակում է նաև այդ ֆունկցիայի մասնական ածանցյալները, ինչպես նաև՝ անկախ փոփոխականներ: Այսպիսով, եթե F-ը տրված ֆունկցիա է, ապա $u=u(x_1, x_2,\dots,x_n)(n)$ փոփոխականի անհայտ ֆունկցիայի նկատմամբ Մ. ա. հ. ունի հետևյալ տեսքը՝

$$F\left(x_1,x_2,\dots,x_n,\frac{\partial u}{\partial x_1},\frac{\partial u}{\partial x_2},\dots,\frac{\partial u}{\partial x_n},\dots,\dots,\frac{\partial^{k_1+k_2+\dots+k_n}u}{\partial^{k_1}x_1\,\partial^{k_2}x_2\cdots\partial^{k_n}x_n}\right)=0: \quad (1)$$

(1) հավասարման մեջ u-ի մասնական ածանցյալների ամենաբարձր կարգը կոչվում է (1) հավասարման կարգ: Եթե F ֆունկցիան ըստ յուրաքանչյուր արգումենտի (բացառությամբ գուցե $x_1$, $x_2$, ...,$x_n$-երի) գծային է, ապա (1)-ը կոչվում է գծային հավասարում: Այսպես՝

$$\sum_{i,j=1}^{n} a_{ij}\frac{\partial^2 u}{\partial x_i\partial x_j}+\sum_{i=1}^{n} b_i\frac{\partial u}{\partial x_i}+Cu=f \quad (2)$$

տեսքի հավասարումը [$a_{ij}=a_{ji}$, $b_i$-ն, c-ն, f-ը ($x_1$, $x_2$, ...,$x_n$) փոփոխականների հայտնի ֆունկցիաներ են, իսկ u-ն՝ նույն փոփոխականների անհայտ ֆունկցիա] գծային, երկրորդ կարգի Մ. ա. հ. է:

Մտցվում է Մ. ա. հ-ի դասակարգում. այն առավել պարզ է (2) տեսքի հավասարումների համար. եթե

$$Q(\lambda)=\begin{vmatrix} a_{11}-\lambda, & a_{12},\dots, & a_{1n}\\ a_{21} & a_{22}-\lambda,\dots, & a_{2n}\\ \cdot\cdot & \cdot & \cdot\ \cdot\\ a_{n1}, & a_{n2}, & a_{nn}-\lambda \end{vmatrix}=0$$

λ-ի նկատմամբ հանրահաշվական հավասարման բոլոր արմատներն ունեն նույն նշանը, ապա (2) հավասարումն անվանում են էլիպսական տիպի, եթե արմատներից մեկն ունի մյուս (n-1)-ին հակադիր նշան, ապա՝ հիպերբոլական, և եթե մեկ արմատը 0 է, իսկ մյուսները նույն նշանի՝ պարաբոլական:

Մ. ա. հ-ին բերվող խնդիրների համար մտցվում է կոռեկտության հասկացություն. խնդիրը կոչվում է կոռեկտ, եթե համապատասխան Մ. ա. հ-ման լուծումը գոյություն ունի, միակն է և կայուն՝ խնդրի պայմանների փոքր փոփոխությունները առաջ են բերում լուծման փոքր փոփոխություն:

Մ. ա. հ. *մաթեմատիկական ֆիզիկայի հավասարումների* մասն են կազմում:

*Գրկ.* Б е р с Л., Д ж о н Ф., Ш е х т е р М., Уравнения с частными производными, пер. с англ., М., 1966. *Ն. Թովմասյան*

**ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱԿԱՐԳ**, մի բաժնետիրական ընկերության վերահսկողությունը (երբեմն փոխադարձ) մյուսների նկատմամբ՝ նրանց արժեթղթերը գնելու միջոցով: Կապիտալների սերտաճման ձև է, զարգացման բարձր մակարդակի է հասնում իմպերիալիզմի փուլում: Կայանում է նրանում, որ գլխադաս՝ «մայր» ընկերությունը ձեռք է բերում մյուս՝ «դուստր» ընկերության բաժնետոմսերի հսկիչ ծրարը (տես *Հսկիչ ծրար բաժնետոմսերի*), իսկ վերջինն իրեն է ենթարկում «թոռ» ընկերությունները: Մ. հ. կազմավորվում է հիմնականում երեք ձևով. խոշոր ձեռնարկատերերն ու բանկատերերը տիրում են առևտրաարդ. կորպորացիաների և ֆինանսա-վարկային հիմնարկությունների բաժնետոմսերը, վերջինները գնում են առևտրաարդ. կորպորացիաների բաժնետոմսերը, և հակառակը: Այսպիսով, մեծաթիվ ձեռնարկություններ բազմաստիճան կախվածության մեջ են ընկնում ֆինանսական խմբերից կամ առանձին ֆինանսական մագնատներից, որոնք հնարավորություն են ստանում տնօրինել օտար կապիտալը (նույնիսկ բաժնետոմսերի 10—20%-ի դեպքում) և վերահսկվող ձեռնարկություններից մենաշնորհային բարձր շահույթ կորզել: Մ. հ. ամրապնդվում է *անձնական ունիայով* և ֆինանսական երկարաժամկետ կապերով: Պետ. մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում պետու-

թյունը նույնպես հանդես է գալիս որպես մասնավոր ընկերությունների բաժնետոմսերի համատեր:

**ՄԱՍՆԱՀԱՏՈՒՄ**, ռեզեկցիա, ախտահարված օրգանի մասնակի հեռացման վիրահատություն: Օրգանի ծայրային հատվածի հեռացումն անվանում են *ծայրատում* (ամպուտացիա), լրիվ հեռացումը՝ արմատահանում (էքստիրպացիա): Գործնական *վիրաբուժությունում* առավել հաճախ կատարում են ստամոքսի (քաղցկեղի, արյունահոսությամբ բարդացած խոցի, ստամոքսաելքի նեղացման ժամանակ) և բարակ ու հաստ աղիքների Մ. (վնասվածքային պատռվածքների, անանցանելիության, ուռուցքների դեպքում): Կատարվում է նաև վահանագեղձի, թոքերի, հոդերի Մ.:

**ՄԱՍՆԱՎՈՐ ԴՊՐՈՑ**, մասնավոր անձանց և կազմակերպությունների կողմից պահվող ուսումնական հաստատություն: Մ. դ-ում ուսուցումը վճարովի է: Ցարական Ռուսաստանում Մ. դ. բաժանվում էին 1-ին, 2-րդ և 3-րդ կարգերի: Հայերը Մ. դ. են ունեցել Արևելյան ու Արևմտյան Հայաստանում, Վրաստանում, Ադրբեջանում, Հյուսիսային Կովկասում, Նոր Նախիջևանում, Պետերբուրգում, Աստրախանում, Միջին Ասիայում, Ղրիմում, Փարիզում, Կ. Պոլսում և այլուր: Ռուսաստանում հայերին թույլ է տրվել ունենալ 3-րդ, հազվագյուտ դեպքերում՝ 2-րդ կարգի դպրոցներ, որոնք ենթակա էին լուսավորության մինիստրությանը: Ուսուցումը տարվում էր հիմնականում ռուսերենով: Ավանդվում էին նաև հայոց լեզու և կրոն: Շրջանավարտները կարող էին ընդունվել պրոգիմնազիաների ու գիմնազիաների ստորին դասարանները: Միայն Երևանի նահանգում 1850—1920-ին գործել են 72 Մ. դ.: Այժմ հայկ. Մ. դ. գործում են սփյուռքի բոլոր գաղթավայրերում (Լիբանան, Սիրիա, Իրան, ԱՄՆ, Արգենտինա, Եգիպտոս ևն):

*Մ. Խուդոյան*

**ՄԱՍՆԱՎՈՐ ԻՐԱՎՈՒՆՔ**, բուրժուական իրավունքում նորմերի ամբողջություն, որով կարգավորվում են մասնավոր (անհատ) անձանց գույքային և որոշ այլ հարաբերությունները, ինչպես նաև այն հարաբերությունները, որտեղ պետությունը ոչ թե հանրային իշխանության կրողն է, այլ պայմանագրային հարաբերության սուբյեկտը: Մ. ի-ին են վերաբերում քաղաքացիական, առևտրական, ընտանեկան և այլ իրավունքները: Ի հակադրություն *հանրային իրավունքի*, Մ. ի. իրավահարաբերության մասնակիցների իրավունքներն ու պարտականությունները ձևականորեն ճանաչում է հավասար: Բուրժ. իրավաբանները Մ. ի. մեկնաբանում են որպես «անձի ազատության արտահայտություն»: Իրականում իրավունքի տրոհումը հանրայինի ու մասնավորի ինքնին արտահայտում է մասնավոր և հանրային շահերի դասակարգային հակամարտ հակասությունների գոյությունը: Մ. ի. մշակվել է *հռոմեական իրավունքում* և համակողմանիորեն զարգանում ու պաշտպանվում է կապիտալիզմի օրոք:

**ՄԱՍՆԱՎՈՐ ՄԵՂԱԴՐԱՆՔ**, քրեական հետապնդման ձև, ըստ որի գործ է հարուցվում բացառապես տուժողի (կամ նրա ներկայացուցչի) բողոքի հիման վրա և կարճվում է մեղադրյալի հետ հաշտվելու դեպքում: Մեղադրանքն այդ գործերով «մասնավոր» է, այսինքն՝ պաշտպանում է ինքը՝ տուժողը: Մ. մ-ի գործեր են հարուցվում ծեծի, զրպարտության, վիրավորանքի և հասարակական ոչ մեծ վտանգավորություն ներկայացնող այլ հանցագործությունների դեպքերում: Քրեական գործը հարուցում է դատարանը, եթե մինչ այդ հաշտեցման նրա գործողություններն անցել են ապարդյուն: Հաշտեցումը թույլատրվում է մինչև դատավճռի արձակման համար խորհրդակցական սենյակ գնալը, իսկ Լիտվական ՍՍՀ, Էստոնական ՍՍՀ քրեական դատավարության օրենսգրքերով՝ մինչև դատավճռի օրինական ուժի մեջ մտնելը: Եթե տուժողը անօգնական վիճակի կամ այլ պատճառների հետևանքով ի վիճակի չէ պաշտպանել իր շահերը, կամ գործն ունի հասարակական հատուկ նշանակություն, դատախազին իրավունք է վերապահվում գործ հարուցել սեփական նախաձեռնությամբ: Դատախազն իրավասու է նաև ցանկացած պահին, հաշվի առնելով գործի կարևորությունը, ներգրավվել գործի մեջ: Դատախազի մասնակցության այդպիսի դեպքերում տուժողի և մեղադրյալի հաշտեցումը (որոշ հանրապետություններում) արգելվում է: Որոշ հանրապետություններում (այդ թվում՝ ՀՍՍՀ-ում) Մ. մ-ի գործը ենթակա չէ կարճման, եթե քննվել է նախաքննության կամ հետաքննության մարմիններում:

**ՄԱՍՆԱՎՈՐ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, արտադրության և փոխանակության փոփոխված հարաբերությունների հետևանք, արտադրության միջոցների և սպառման առարկաների յուրացման պատմականորեն ստեղծված որոշակի ձև, երբ դրանք պատկանում են մասնավոր անձանց: Մ. ս. արտադրության և փոխանակության զարգացման պահանջների բավարարման միջոց է, բխում է տնտ. պատճառներից: Առաջացել է նախնադարյան-համայնական հասարակարգի քայքայման, ստրկատիրության ծագման ընթացքում, երբ աշխատանքի հասարակական բաժանման և արտադրողականության բարձրացման շնորհիվ հնարավոր դարձավ արտադրանք թողարկել հատկապես փոխանակության համար: Սկսեց ձևավորվել ապրանքային արտադրությունը: Քանի որ արտադրությունը հիմնականում վարում էին առանձին ընտանիքներ, ուստի *հավելյալ արդյունքը*, բացառությամբ համայնական կարիքներին հատկացվող բաժնի, մնում էր նրանց տրամադրության տակ: Այն կուտակվում էր բնամթերքի և գանձերի ձևով: Ընտանիքների միջև աշխատանքի մասնատման հետևանքով Մ. ս. դարձավ նաև հողը (տես *Հողասեփականություն*): Մ. ս-յան ծագմամբ հասարակությունը բաժանվեց հակամարտ դասակարգերի, առաջացան մարդու կողմից մարդու շահագործումն ու դասակարգային պայքարը: Կապիտալիզմի պայմաններում Մ. ս. հասնում է առավելագույն զարգացման: Միաժամանակ խորանում է հակասությունն արտադրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր կապիտալիստական ձևի միջև, առաջանում են Մ. ս. սոցիալիստական սեփականությամբ փոխարինելու օբյեկտիվ պայմաններ: Տես նաև *Սեփականություն*:

*Գրկ.* Մ ա ր ք ս Կ., Կապիտալ, հ. 1, Ե., 1954: Է ն գ ե լ ս Ֆ., Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը, Մարքս Կ. և Էնգելս Ֆ., Ընտիր երկ., հ. 3, Ե., 1978: Լ ե ն ի ն Վ. Ի., Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում, Երկ., հ. 3: Ն ո ւ յ ն ի, Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա, հ. 22:

**ՄԱՍՆԱՏՈՒՓ**, *մասունք* պահելու տուփ: Բնութագրական է հիմնականում քրիստոնեական պաշտամունքին: Հայտնի է III դարից, տարածված էր հատկապես Եվրոպայում, դեռևս IV դարից՝ Հայաստանում: Լինում է տարբեր ձևի՝ եռանկյունաձև, քառանկյունաձև, շրջանաձև, սրտաձև ևն:



Մասնատուփ, արծաթ (Վան, XIX դ., Հայաստանի պատմության պետական թանգարան, Երևան)

Պատրաստվում էր *մանրարուրք* տեխնիկայով, թանկարժեք մետաղներից, փղոսկրից, փայտից և զարդարվում թանկագին քարերով, բուսական զարդանախշերով: Մ-ի վրա սովորաբար նշվում էին պատրաստման տարեթիվը, վարպետի և պատվիրատուի անվանատառերը և որպես կանոն «ի վայելումն» դարձվածքը (օրինակ՝ «Ի վայելումն Անթառամի»): Կենցաղում օգտագործվել է մինչև XX դ. սկիզբը:

*Ն. Ավագյան*

**ՄԱՍՆԵ** (Massenet) Ժ յ ու լ Էմիլ Ֆրեդերիկ (12.5.1842, Մոնտո, ք. Սենտ-Էտյենի մոտ —13.8.1912, Փարիզ), ֆրանսիացի կոմպոզիտոր: Ֆրանսիայի ինստ-ի անդամ (1878): 1863-ին ավարտել է Փարիզի կոնսերվատորիան (Ա. Թոմայի կոմպոզիցիայի դասարան), շահել հռոմեական մրցանակ («Դավիթ Ռիցցիո» կանտատի համար): 1878—96-ին Փարիզի կոնսերվատորիայի պրոֆեսոր (աշակերտներից են՝ Ա. Բրյունո, Գ. Շարպանտյե, Ջ. Էնեսկու, Ժ. Տիերսո, Է. Շոսսոն): 1910-ից՝ Նըրբագեղ արվեստների ակադեմիայի պրեզիդենտ: Մ. ֆրանս. քնարական օպերայի և ռոմանսի հռչակված վարպետ է: Իր օպերաների սյուժեները մեծ մասամբ քաղել է դասական գործերից, որպես կանոն դրանց տալով քնարական մեկնաբանում: Մ-ի 30-ից ավելի օպերաներից, այդ թվում՝ «Դոն Սեզար դը Բազան» (1872, ըստ Վ. Հյուգոյի), «Սիդ» (1885, ըստ Պ. Կոռնելի), «Տաիս» (1894, ըստ Ա. Ֆրանսի), «Դոն Կիխոտ» (1910, ըստ Մ. Սերվանտեսի), հատկապես նշանավոր են «Մանոն»-ը (1884, ըստ Ա. Պրեվոյի), «Վերթեր»-ը (1886, ըստ Վ. Գյոթեի): Տուրք է տվել նաև վագներյան («Էսկլարմոնդա», 1889) և վերիստական («Նավարրուհի», 1894, «Սաֆո», 1897) ազդեցություններին: Գրել է նաև սիմֆոնիկ երաժշտություն («Էլզասի տեսարաններ», «Նեապոլիտանական տեսարաններ»), օրատորիաներ, խմբերգեր, բալետներ, շուրջ 200 ռոմանս (այդ թվում՝ հանրահայտ «Էլեգիա»-ն), դաշնամուրա-

յին գործեր են: Մ. զգալի ներգործություն է ունեցել ֆրանս., մասամբ և իտալ. երաժշտության վրա (Դեբյուսի, Պուչչինիի վաղ շրջան):

*Գրկ.* Кремлев Ю., Жюль Массне, М., 1969; Coguis A., Ulés Massenet, P., 1965; Harding J., Massenet, N. Y., 1971.

*Ա. Բուդաղյան*

**ՄԱՍՆԻԿ-ԱԼԻՔԱՅԻՆ ԵՐԿՎՈՒԹՅՈՒՆ**, մասնիկ-ալիքային դուալիզմ, *քվանտային մեխանիկայի* հիմքում ընկած դրույթ, ըստ որի՝ միկրոօբյեկտների վարքում դրսևորվում են ինչպես մասնիկային, այնպես էլ ալիքային հատկություններ:

**ՄԱՍՆԻԿՆԵՐ** (քերականական), բառակազմական և ձևակազմական (բառափոխական) *ձևույթներ*: Առաջինները հիմնական ձևույթներից կամ արմատներից կազմում են բառեր, կամ լեզվում արդեն եղած բառերից կազմվում են նոր իմաստ արտահայտող նոր բառեր (արհամարհ**անք**, ընկեր**ուհի**), իսկ երկրորդները կազմում են բառի ձևերը՝ ցույց տալով նրա հարաբերությունները այլ բառերի հետ (վազք-վազքի-վազքից-վազքով): Մ-ի մեջ են մըտնում նաև քերականական իմաստներ արտահայտող, այսպես կոչված, ձևական բառերը (**պիտի** գրեմ, գրել **տամ**): Հայ քերականագիտության մեջ կա Մ-ի մի այլ ըմբռնում ևս. ըստ Մ. Աբեղյանի քերականական համակարգի՝ նյութական նշանակություն ունեցող խոսքի մասերին՝ բային, գոյականին, ածականին և մակբային հակադրվում են ձևական նշանակություն ունեցող բառերը, որոնք կոչվում են խոսքի Մ.: Վերջիններս իրենց նշանակությամբ լինում են. ա. կապակցական բառեր (կապեր և համադասական ու ստորադասական շաղկապներ), բ. եղանակական բառեր կամ Մ. (թերևս, գուցե, անշուշտ), գ. բացասական Մ. (ոչ, չ), դ. պատասխանական բառեր (այո, ոչ):

*Մ. Ասատրյան*

**ՄԱՍՆԻԿՆԵՐԻ ԿԱՆԱԼԱՎՈՐՈՒՄ**, լիցքավորված տարրական մասնիկների կամ իոնների յուրահատուկ շարժում բյուրեղներում՝ ատոմական հարթություններով




կամ առանցքներով կազմված «կանալներով»: Համապատասխանաբար, Մ. կ. լինում է հարթ կամ առանցքային: Քանի որ ատոմների միջուկներն ունեն դրական էլեկտրական լիցք, ուստի հարթ (առանցքային) կանալավորման դեպքում դրական մասնիկները, վանվելով, կատարում են տատանողական շարժում ատոմական հարթությունների (առանցքների) միջև, իսկ բացասականները՝ ձգվելով, մի հարթության (առանցքի) շուրջը: Շարժման պարբերությունը հազարավոր անգամ մեծ է միջատոմային հեռավորությունից, և այդ հանգամանքը թույլ է տալիս մոդելային հաշվումների ժամանակ ընդունել, որ էլեկտրական լիցքը բյուրեղային հարթություններում (առանցքներում) բաշխված է ոչ թե ընդհատ, այլ հավասարաչափ: Մ. կ. տեղի ունի, եթե մասնիկի արագության ուղղությամբ և բյուրեղային հարթությամբ (առանցքով) կազմված $\psi$ անկյունը փոքր է որոշակի $\psi_{կր}$ կրիտիկական անկյունից (նկ. ), որը կախված է բյուրեղի պարամետրերից, մասնիկի լիցքից և էներգիայից: Կանալավորված դրական (բացասական) մասնիկների հետագծերն անցնում են միջուկներից ավելի մեծ (փոքր) հեռավորությամբ, քան չկանալավորված մասնիկներինը: Դա հանգեցնում է մի քանի կարևոր հետևանքների. 1. մասնիկների ատոմային և միջուկային երևույթները բյուրեղներում ուժեղ կախում են ցուցաբերում $\psi$ անկյունից: 2. Կանալավորված դրական մասնիկների իոնացման կորուստներն ավելի քիչ են, հետևաբար՝ վազքի երկարություններն ավելի մեծ, քան չկանալավորված կամ համապատասխան բացասական մասնիկներինը: 3. Կանալավորված բացասական մասնիկներն ավելի շատ բնութագրական ռենտգենյան ճառագայթներ են առաջացնում, քան չկանալավորված կամ համապատասխան դրական մասնիկները:

Տատանողական շարժման հետևանքով կանալավորված մասնիկներն առաջացնում են նոր տեսակի ճառագայթում, որի ինտենսիվությունը ռենտգենյան և $\gamma$-քվանտների հաճախականությունների որոշակի տիրույթում գերազանցում է *արգելակման ճառագայթման* ինտենսիվությանը: Նոր ճառագայթման բնույթը հեշտ կլինի հասկանալ, եթե դիտարկվի հաշվարկման այնպիսի համակարգում, որտեղ կանալավորված մասնիկի միջին արագությունը հավասար է զրոյի: Այդ համակարգից կանալավորված մասնիկը կդիտվի որպես *դիպոլ*, որն ունի իր դիպոլային ճառագայթումը: Լաբորատոր համակարգի անցնելիս, *Դոպլերի էֆեկտի* հետևանքով ճառագայթումը դառնում է կոշտ և խստորեն ուղղված դեպի առաջ:

Մ. կ-ման երևույթը կանխագուշակել է դեռևս Յո. *Շտարկը* (1912), իսկ տեսականորեն «վերահայտնաբերվել» և փորձով դիտվել է 60-ական թթ.: Կանալավորված մասնիկների ճառագայթումը հայտնաբերվել է սովետական ֆիզիկոսների ջանքերով: Այդ երևույթն արդեն կիրառվում է պինդ մարմնի և բարձր էներգիայի մասնիկների ֆիզիկայում, իսկ կանալավորված էլեկտրոնների ճառագայթումը կարող է ծառայել $\gamma$-քվանտների ինտենսիվ փնջեր ստանալու աղբյուր: *Կ. Իսպիրյան*

**ՄԱՍՆԻԿՆԵՐԻ ՑՐՈՒՄ**, նյութի մասնիկների բախման պրոցես, որի հետևանքով փոխվում են դրանց վիճակները (առաձգական ցրում) կամ ծնվում այլ մասնիկներ (ոչ առաձգական ցրում): Մ. ց-ման փորձերը թույլ են տալիս ուսումնասիրել դրանց ներքին կառուցվածքը և փոխազդեցությունների հատկությունները: Այսպես, ծանր մետաղների ատոմներից $\alpha$-մասնիկների ցրման փորձերը (Է. Ռեզերֆորդ, 1911) հանգեցրին ատոմային միջուկների հայտնագործմանը: Բարձր էներգիայի տարրական Մ. ց-ման ժամանակակից փորձերը այդ մասնիկների հատկությունների մասին ստացվող ինֆորմացիայի հիմնական աղբյուրն են: Ցրման պրոցեսում չափվող հիմնական ֆիզիկական մեծությունը *էֆեկտիվ լայնական կտրվածքն* է: Տարրական մասնիկների միջուկների և ատոմների ցրումը տեղի է ունենում քվանտային տեսության օրենքների համաձայն: Ցրման ամեն մի պրոցեսի համապատասխանում է *ցրման ամպլիտուդ* կոչվող որոշակի կոմպլեքս մեծություն, որի մոդուլի քառակուսին համեմատական է կտրվածքին: Ցրման ամպլիտուդների հավաքածուն պրոցեսի սկզբնական և վերջնական տարբեր վիճակների համար կազմում է ցրման մատրից կամ S-մատրից (Վ. Հայզենբերգ, 1943): Ցրման քվանտային տեսության հիմնական խնդիրը S-մատրիցի տարրերի հաշվումն է այս կամ այն տեսակի փոխազդեցության համար: Ընդ որում էական են այն *պահպանման օրենքները*, որոնք տեղի ունեն տվյալ փոխազդեցության դեպքում: Բացի այդ, S-մատրիցի վրա խիստ սահմանափակում է դնում նաև այն պայմանը, ըստ որի՝ տրված սկզբնական վիճակից տեղի ունեցող ցրման բոլոր հնարավոր պրոցեսների գումարային հավանականությունը պետք է հավասար լինի մեկի (ունիտարության պայման): Ոչ մեծ ինտենսիվության փոխազդեցության դեպքում S-մատրիցը կարելի է հաշվել *խոտորումների տեսությամբ*՝ շարքի վերածելով այն ըստ տվյալ փոխազդեցությանը բնորոշ փոքր պարամետրի: Օրինակ, էլեկտրամագնիսական փոխազդեցության համար այդպիսի պարամետր է նուրբ կառուցվածքի հաստատունը՝ $\alpha \simeq 1/137$: Ուժեղ (միջուկային) փոխազդեցության դեպքում պետք է տարբերել մեծ և փոքր (ուժեղ փոխազդող մասնիկների բնութագրական չափերի համեմատությամբ) հեռավորությունների տիրույթներ: Անորոշությունների քվանտամեխանիկական առնչության համաձայն, ցրման ժամանակ այդ տիրույթներին համապատասխանում են իմպուլսի փոքր և մեծ փոխանցումներ: Իմպուլսի փոքր փոխանցումներով ուժեղ փոխազդող մասնիկների ցըրման դեպքում բնութագրական փոքր պարամետրը բացակայում է, որ համապատասխանում է այդպիսի փոխազդեցության մեծ ինտենսիվությանը: Այդ տիրույթում ցրման ամպլիտուդները հաշվելու համար խոտորումների տեսությունը կիրառելի չէ, և տեսական վերլուծությունը, որպես կանոն, հիմնվում է ունիտարության պայմանի նման ընդհանուր սկզբունքների կիրառման և ամպլիտուդի՝ իբրև էներգիայի ու փոխանցված իմպուլսի ֆունկցիայի, անալիտիկ հատկությունների վերաբերյալ ենթադրությունների վրա: Ինչպես ցույց են տալիս վերջին տարիներին ստացված փորձարարական տվյալները, իմպուլսի մեծ փոխանցումների (փոքր հեռավորությունների) տիրույթում ուժեղ փոխազդեցության ինտենսիվությունը ասիմպտոտորեն նվազում է, և խոտորումների տեսության կիրառման հնարավորություն է առաջանում:

*Ա. Խուջամիրյան*

**ՄԱՍՇՏԱԲ** (գերմ.Masstab), գծագրի, պլանի աերոֆոտոհանույթի կամ քարտեզի վրա հատվածի երկարության հարաբերությունը բնության մեջ իրենց համապատասխան հատվածի երկարությանը: Եթե այդ հարաբերությունը արտահայտվում է վերացական թվով, կոչվում է թվային Մ.: Այն արտահայտվում է կոտորակով, որի համարիչը հավասար է մեծության միավորին, իսկ հայտարարը ցույց է տալիս, թե պատկերվող տարածության գիծը քանի անգամ է փոքրացված: Գծի երկարությունը չափելու համար կազմվում է գծային Մ.: Վերջինը հավասար միավորների (*մմ*-երի, *սմ*-երի) բաժանված ուղիղ գիծ է, որի թվերը (*մ*, *կմ*) ցույց են տալիս, թե այդ միավորներից յուրաքանչյուրը իրականում քանի *կմ*-ի կամ *մ*-ի է հավասար:

**ՄԱՍՈՆ** Միխայիլ Եվգենիչ [ծն. 21.11.(3.12).1897, Պետերբուրգ], սովետական հնագետ և պատմաբան-արևելագետ: Թուրքմենական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1951): Պրոֆեսոր, Միջինասիական պետ. համալսարանի (Տաշքենդ) հնագիտության ամբիոնի վարիչ: Կատարել է քուշանական և միջնադարյան Թերմեզի պեղումները (1936—38): 1946-ից՝ Թուրքմեն. ՍՍՀ-ում, այդ թվում՝ նաև պարթևական Նիսայում ու Մերվում պեղումներ կատարող Հարավ-Թուրքմենստանյան հնագիտական միացյալ արշավախմբի ղեկավարը: Աշխատությունները վերաբերում են Միջին Ասիայում ստրկատիրության երբեմնի գոյության խնդրին, քաղաքների (Սամարղանդ, Բուխարա ևն) զարգացման օրինաչափություններին, դրամական տնտեսության և լեռնային գործի պատմությանը, ճարտարապետությանը ևն: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

*Գրկ.* Овезов Д. М., Академик АН Туркменской ССР М. Е. Массон [Библиография], Ашхабад, 1970.

**ՄԱՍՈՆՈՒԹՅՈՒՆ**, ֆրանկմասոնություն (ֆրանս. franc-maçon— ազատ որմնադիր), կրոնա-բարոյական հոսանք: Առաջացել է XVIII դ. սկզբին, Անգլիայում, տարածվել համարյա բոլոր քրիստոնյա երկրներում: Մ-յան հավատոհանգանակը [շարադրված է անգլիացի քարոզիչ Ջ. Անդերսոնի կազմած «Կանոնադրությունների գրքեր»-ում (1723)] հավատակիցներին կոչ է անում փոխօգնության, եղբայրության, սիրո, հավասարության հիմունքներով միավորվել և ազնվացնել մարդկանց: Մասոնական կազմակերպությունների (օթյակների) բարդ կառուցվածքը (նվիրապետությունը բաղկացած էր 99 աստիճանից) և ծեսերի, խորհրդանշանների առատությունը փոխառնված էր որմնադիրների միջնադարյան համքարություններից: Սկզբնական շրջանում Մ. արտահայտել է ֆեոդ. պետության և եկեղեցու դեմ բուրժուա-ազնվականական խավերում եղած դժգոհությունը և դասակարգային հակասությունները խաղաղ ճանապարհով հարթելու նրանց ձգտումը: XVIII դ. Մ-յանը հարել են բազմաթիվ լուսավորիչներ, փիլիսոփաներ, գրողներ, երաժիշտներ (Վոլտեր, Յո. Վ. Գյոթե, Յո. Գ. Հերդեր, Կ. Մ. Վիլանդ, Գ. Է. Լեսինգ, Յո. Գ. Ֆիխտե, Վ. Ա. Մոցարտ, Ֆ. Յո. Հայդն, Ա. Ն. Ռադիշչև, Ն. Ի. Նովիկով և ուրիշներ): Մասոնական առաջին օթյակների ազատամտությունը և հակակղերական բնույթը հարուցեց Հռոմի պապի դժգոհությունը, որը 1738-ին բանադրեց Մ.: Սակայն աստիճանաբար Մ-ում գերիշխեց խորհրդապաշտությունը (*միստիկա*): Այդ պատճառով Ֆրանսիայում յակոբինյան դիկտատուրան փակեց մասոնական կազմակերպությունները, որոնք վերականգնվեցին Նապոլեոն I-ի օրոք: Ռուսաստանում կային ինչպես հետադեմ, այնպես էլ դեմոկրատական մասոնական օթյակներ: Առժամանակ Մ-յանն են հարել նաև դեկաբրիստները: Ռուսաստանում Մ. արգելվեց 1822-ին: XIX դ. կեսին մասոնական օթյակներ են հիմնվել նաև Կ. Պոլսի և Զմյուռնիայի հայկ. գաղթավայրերում: Նշանավոր են եղել Կ. Պոլսի «Հայկ» («Օրիոն») և «Սեր» օթյակները (ղեկավարել են Ս. Թագվորյանը, Հ. Սվաճյանը, Մ. Մամուրյանը), որոնց գործունեությունն ունեցել է ազգային-ազատագրական բնույթ:

Ներկայումս Մ. տարածված է հիմնականում ԱՄՆ-ում և Մեծ Բրիտանիայում, սակայն մասոնական օթյակները որևէ էական դեր չեն խաղում այդ երկրների հասարակական կյանքում:

**ՄԱՍՅԱՆ** Անահիտ Հակոբի [ծն. 9(22).11.1900, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)], հայ սովետական դերասանուհի: ՀՍՍՀ ժող. արտիստուհի (1950): 1919—1925-ին սովորել է Մոսկվայի հայկ. դրամատիկական ստուդիայում: 1928—29-ին աշխատել է Լենինականի դրամատիկական, 1930—45-ին՝ Երևանի պատանի հանդիսատեսի, 1945—58-ին՝ Սունդուկյանի անվ. թատրոններում: Լավագույն դերերից են՝ Սոֆի (Հ.Պարոնյանի «Ատամնաբույժն արևելյան»), Կուկուշկինա (Ա. Օստրովսկու «Եկամտաբեր պաշտոն»), Ռուտիան (Դեմիրճյանի «Քաջ Նազար»), Էփեմիա (Սունդուկյանի «Պեպո»), Աննա (Գուլակյանի «Արշալույսին»), Աննա Դմիտրևնա («Կենդանի դիակ», ըստ Լ. Տոլստոյի): Նկարահանվել է «Սարոյան եղբայրներ» կինոնկարում: *Ա. Խաչիկյան*

**ՄԱՍՊԵՐՈ** (Maspero) Գաստոն (1846—1916), ֆրանսիացի եգիպտագետ: Վիմագրությունների ֆրանս. ակադեմիայի անդամ (1883): 1881-ին Կահիրեում հիմնել է Արևելյան հնագիտության ֆրանս. ինստ-ը: 1881—86-ին և 1899—1914-ին եղել է «Հնությունների ծառայության» և Եգիպտական թանգարանի դիրեկտոր: Դեյր էլ Բահարիում հայտնաբերել է XVII—XXII դինաստիաների փարավոնների մումիաներով գաղտնարանը և այլ նյութեր: Սկզբնավորել է Կահիրեի թանգարանի Գլխավոր կատալոգի հրապարակումը: Մ-ի աշխատություններն ընդգրկում են եգիպտագիտության բոլոր բնագավառները: «Դասական Արևելքի ժողովուրդների հին պատմություն» (h. 1—3, 1895—99) երկում (որ գրել է իր ժամանակին հայտնի փաստերի հիման վրա) հանրագումարի է բերել Մերձավոր Արևելքի հին ժողովուրդների ամբողջ պատմությունը: «Արևելքի պատմություն» (1894) աշխատության մեջ խոսում է նաև Հայաստանի, հայ-ասուրական, հայ-պարսկ. հարաբերությունների մասին: Մ. հին արլ. հասարակությունը բնորոշել է որպես ֆեոդալական, թեև ընդունել է ստրուկների աշխատանքի լայն օգտագործումը:

*Երկ.* Египет, М., 1915.

**ՄԱՍՍԱ** (< լատ. massa — մեծաբեկոր, զանգված), տես *Զանգված*:

**ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆ**, *արտադրության* կազմակերպման եղանակ: Բնորոշվում է թողարկվող արտադրանքի բազմաքանակությամբ, համասեռությամբ, սահմանափակ տեսականիով: Արտադրության մասնագիտացման բարձրագույն ձևն է, հնարավորություն է տալիս ձեռնարկությունում կենտրոնացնել մեկ կամ մի քանի տիպաչափի համասեռ արուրքների կամ դրանց դետալների թողարկումը: Կիրառվում է մեքենաշինության, սարքաշինության, թեթև ու սննդի արդյունաբերության մեջ ևն: Կիսաֆաբրիկատների ստանդարտացման, նորմալացման, տեխնոլոգիական պրոցեսների տիպավորման ուղիով կազմակերպվում է և՛ առանձին արտադրամասի ու տեղամասի, և՛ ամբողջ ձեռնարկության մասշտաբով: Տեխնոլոգիական պրոցեսը գերազանցապես առաջադիմական է, համեմատաբար կայուն, աշխատողների որակավորումը՝ բարձր: Օպերացիաները համաչափ են, աշխատանքի առարկաների շարժն ըստ աշխատատեղերի՝ անընդհատ (հաճախ *կոնվեյերների* կիրառմամբ): Մ. ա-յան շնորհիվ աճում է արտադրանքի ծավալը, բարելավվում որակը, բարձրանում աշխատանքի արտադրողականությունն ու իջնում ինքնարժեքը:

**ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ՍՊԱՍԱՐԿՄԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ**, մաթեմատիկայի բաժին, որն ուսումնասիրում է պատահական բնույթ ունեցող պահանջների զանգվածային հոսքը սպասարկող համակարգեր: Սպասարկման համակարգ է կոչվում ամեն մի ձեռնարկություն, ուր ժամանակի պատահական պահերին ստացվում են որոշակի ծառայություն կատարելու պատվերներ (օրինակ, ավտոմատ հեռախոսային կայան), ընդ որում, պատահական կարող է լինել նաև պատվերի կատարման տևողությունը: Սպասարկման համակարգը բաղկացած է որոշակի թվով սպասարկող հարմարանքներից՝ գծերից: Եթե հերթական պահանջը ստացվելու պահին կա սպասարկման ազատ գիծ, ապա վերջինս անմիջապես անցնում է պահանջի կատարմանը, իսկ եթե բոլոր գծերն զբաղված են, ապա տվյալ պահանջը կամ մերժվում է (կորուստներով համակարգ), կամ հերթի դրվում (առանց կորուստների համակարգ): Պահանջների հոսքը պատահական պրոցես է, որը պարզագույն դեպքում բնորոշվում է $t$ ժամանակամիջոցում $k$ պահանջներ ստացվելու $V_k(t)$ հավանականությունով: Մեկ պահանջի կատարման $\tau$ պատահական ժամանակը բնորոշվում է իր $F(t)=P(\tau<t)$ բաշխման ֆունկցիայով: Սպասարկման համակարգի աշխատանքը բնութագրող պարզագույն պարամետրերն են. ժամանակի $t$ պահին $n$ գիծ զբաղված լինելու $P_n(t)$ հավանականությունը, մերժման հավանականությունը (կորուստներով համակարգի համար), հերթի տևողությունը (առանց կորուստնե-

րի համակարգի համար): Այսպես, օրինակ, եթե պահանջների հոսքը պուասոնյան է, այսինքն՝ $V_k(t)=(t)\frac{(\lambda t)^k e^{-\lambda t}}{k!} (\lambda>0)$, իսկ սպասարկման ժամանակի բաշխումը ցուցչային՝ $F(t)=1-e^{-\beta t}$, $t>0$, $(\beta>0)$, ապա $P_k=\lim_{t\to\infty} P_k(t)$ հավանականությունները որոշվում են էռլանգի բանաձևով.

$$P_k=\frac{\frac{1}{k!}\left(\frac{\lambda}{\beta}\right)^k}{\sum_{k=0}^{n}\frac{1}{k!}\left(\frac{\lambda}{\beta}\right)^k},$$

մասնավորապես, մերժման հավանականությունը որոշվում է

$$Pn=\frac{\frac{1}{k!}\left(\frac{\lambda}{\beta}\right)^n}{\sum_{k=0}^{n}\frac{1}{k!}\left(\frac{\lambda}{\beta}\right)^k}$$

բանաձևով:

*Գրկ.* Хинчин А. Я., Работы по математической теории массового обслуживания, М., 1963; Климов Г. П., Стохастические системы обслуживания, М., 1966.

*Ֆ. Գալստյան*

**ՄԱՍՍԱՉՈՒՍԵԹՍ** (Massachusetts), նահանգ ԱՄՆ-ում, Ատլանտյան օվկիանոսի ափին, Նոր Անգլիայում: Տարածությունը 21,4 հզ. *կմ*² է, բն. 6 մլն (85%-ը՝ քաղաքային, 1974): Վարչական, տնտ. և մշակութային կենտրոնը՝ Բոստոն: Մ. ԱՄՆ-ի խիտ բնակեցված և տնտեսապես զարգացած նահանգներից է: Տնտեսության մեջ առաջատարը մշակող արդյունաբերությունն է, հատկապես բազմատեսակ մեքենաշինությունն ու թեթև արդյունաբերությունը: Զարգացած է ռադիոէլեկտրոնային, էլեկտրատեխ., տեքստիլ, կաշվի-կոշիկի, քիմ., ռետինի, թղթի, պոլիգրաֆ արդյունաբերությունը: Զարգանում է միջուկային էներգետիկան: Գյուղատնտեսությունն ունի մերձքաղաքային բնույթ: Ծովափերին զբաղվում են ձկնորսությամբ: Մ-ում են Հարվարդի (Քեմբրիջում) և Կլարկի (Վուսթերում) համալսարանները: Տուրիզմի վայր է:

**ՄԱՍ-ՍՊԵԿՏՐՈՍԿՈՊԻԱ**, մաս-սպեկտրոմետրիա, մաս-սպեկտրոգրաֆիա, նյութի հետազոտման մեթոդ՝ ըստ այդ նյութը կազմող ատոմների ու մոլեկուլների զանգվածների: Մեթոդի էությունը հանգում է նյութի իոնացված մոլեկուլների ու ատոմների (իոնների) գրանցմանը, որոնք ջոկվում են ըստ m/e հարաբերության մեծության (m-ը իոնի զանվածն է, e-ն՝ լիցքը): Ստացված զանգվածների սպեկտրով որոշվում են հետազոտվող նյութի մեջ բաղադրատարրերի հարաբերական պարունակությունը և դրանց զանգվածները: Մ-ս-ի հիմնական գործիքը մաս-սպեկտրոգրաֆն է (կամ մաս-սպեկտրոմետրը), որում իոնային փնջերը ջոկվում են ըստ m/e հարաբերության՝ էլեկտրական ու մագնիսական դաշտերի միջոցով: Առաջին մաս-սպեկտրոմետրը կառուցել է Ջ. Ջ. *Թոմսոնը* 1913-ին: Այդ սարքով հայտնաբերվել է $Ne^{20}$ և $Ne^{22}$ կայուն իզոտոպների գոյությունը: 1919-ին Ֆ. *Աստոնը* կիրառել է էլեկտրական և մագնիսական փոխուղղահայաց դաշտերում կոլիմացված իոնային փնջերի հաջորդական շեղման սկզբունքը: Այդ սկզբունքով ստեղծված մաս-սպեկտրոմետրը, ի տարբերություն Թոմսոնի գործիքի, որտեղ իոնների փնջերը կիզակետվում էին պարաբոլի ճյուղեր կազմող գծերի վրա, հնարավորություն տվեց փնջերը կիզակետել ըստ միևնույն m/e-ի: Զգալիորեն բարձրացվեց մաս-սպեկտրոմետրի ճշգրտությունը և հնարավորություն ընձեռնվեց առաջին անգամ ճիշտ չափել ատոմների զանգվածներն ու հայտնաբերել իզոտոպներ: Նկարում պատկերված է Աստոնի մաս-սպեկտրոգրաֆի սխեման: Իոնային աղբյուրում առաջացած իոններն անցնում են $S_1$, $S_2$ կոլիմատորներից և մտնում C թիթեղների միջև ստեղծված էլեկտրական դաշտը, որի ազդեցությամբ մասնիկները շեղվում են հարթության մեջ $e/mv^2$-ուն համեմատական Θ անկյունով (v-ն իոնի արագությունն է): Այնուհետև այդ փնջի մի մասը կտրվում է $S_3$ կոլիմատորով, իսկ մնացած մասն անցնում է M էլեկտրամագնիսի ստեղծած մագնիսական դաշտը: Ընդ



Աստոնի մաս-սպեկտրոգրաֆի սխեման

որում վերջինս ուղղահայաց է էլեկտրական դաշտին և իոնների փունջը շեղում է նույն հարթության մեջ հակառակ ուղղությամբ, e/mv-ին համեմատական φ անկյունով: Այդ դեպքում միևնույն e/m լիցքով մասնիկներն անկախ արագությունից կհավաքվեն միևնույն F կետում: Պատճառն այն է, որ փոքր արագության իոնները էլեկտրական դաշտում շեղվում են մեծ անկյունով և մագնիսական դաշտում շարժվում փոքր շառավղի հետագծերով, իսկ մեծ արագության իոնները՝ հակառակը: Տարբեր e/m հարաբերությամբ իոնների հետագծերը հատվում են տարբեր կետերում, որոնց համախումբը գտնվում է մի ուղղի վրա: Համապատասխանորեն տեղադրված AB լուսանկարչական թիթեղի սևացման գծերով կարելի է որոշել փնջի զանգվածային սպեկտրը, եթե հայտնի է իոնի e լիցքը: Մաս-սպեկտրոմետրում լուսանկարչական թիթեղի փոխարեն, որպես ընդունող սարք օգտագործվում է էլեկտրոդ, որի օգնությամբ չափվում է իոնային հոսանքը: Ըստ որում, էլեկտրոդի առջև տեղադրվում է կոլիմատոր, որից անցնում են միայն որոշակի e/m հարաբերությամբ իոնները: Տարբեր e/m հարաբերությամբ իոններ գրանցելու համար պետք է փոխել մագնիսական դաշտի արժեքը: Մաս-սպեկտրոգրաֆների և մաս-սպեկտրոմետրերի հիմնական բնութագրական պարամետրերն են լուծունակությունը, դիսպերսիան և զգայնությունը: Ժամանակակից մաս-սպեկտրոմետրերի լուծունակությունը շատ բարձր է և հասնում է $10^{-8}-10^{-7}$-ի: Մ-ս-ի մեթոդը կիրառվում է ֆիզիկաքիմ. հետազոտություններում, կենսաբանության, բժշկության մեջ, տեխնիկայում:

*Գրկ.* Астон Ф., Масс-спектры и изотопы, пер. с англ., М., 1948; Рафальсон А. Э., Шерешевский А. М., Масс-спектрометрические приборы, М.—Л., 1968; Джейрам Р., Масс-спектрометрия. Теория и приложения, пер. с англ., М., 1969.

*Ա. Խուդավերդյան*

**ՄԱՍՏԱՐԱ**, Սելավ Մաստարա, գետ Հայկական ՍՍՀ-ում, Սևջրի աջ վտակը: Երկարությունը 98 *կմ* է, ավազանը՝ 1580 *կմ*²: Սկիզբ է առնում Արագածի հվ-արմ. լանջից, մոտ 2500 *մ* բարձրությունից: Հոսում է դեպի հվ., ապա՝ հվ-արլ.: Վերին հոսանքում հունն ունի մինչև 30 *մ* խորություն: Սնումը գերազանցապես անձրևային է: Ունի անկայուն, սելավային ռեժիմ, երբեմն ցամաքում է (30—50 օր): Հայտնի է 2—3 տարին մեկ կրկնվող ուժեղ ցեխաքարային սելավներով: 1957-ի հունիսի 12-ին դիտվել է 128 *մ*³/*վրկ* սելավային հոսք:

**ՄԱՍՏԱՐԱ**, գյուղ Հայկական ՍՍՀ Թալինի շրջանում, շրջկենտրոնից 8 *կմ* հյուսիս: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև հացահատիկի և կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, 2 մանկապարտեզ, կինո, կենցաղսպասարկման տաղավար, կապի բաժանմունք, բուժկայան: Մ-ում գործում է Երևանի ժամացույցի գործարանի մասնաճյուղը: 1957—58-ին Մ-ում լույս է տեսել «Մաստարայի կոլտնտեսական» թերթը: Բնակիչների նախնիները եկել են Ալաշկերտից և Մուշից, 1809-ին:

Մ. պատմական Այրարատ նահանգի Արագածոտն գավառի Մազդարա բնակավայրի տարածքում է: Ըստ Հ. Շահխաթունյանի, այստեղով անցել է Արքունի ճանապարհը, որի վրա եղել է «իջևանատուն արքունի»: Մ-ի տարածքում պահպանված հնագիտական և ճարտ. հուշար-


Մաստարա



Մաստարայի Ս. Հովհաննես եկեղեցին արևելքից




Մաստարայի Ս. Հովհաննես եկեղեցու հատակագիծը

ձանները վկայում են, որ միջնադարում այն եղել է նշանավոր բնակավայր: Գյուղի արլ. կողմում միջնադարյան գերեզմանոցն է և հնագույն մատուռի ավերակները, գերեզմանոցից արլ., գյուղի սահմանը կազմող բլրի լանջին, Մ-ի մեծ խաչքարն է (1223), հս-արմ. բարձունքի վրա պահպանվել են միջնադարյան ամրոցի ավերակները և հնագույն մատուռի տեղում կառուցված Ստեփանոս Նախավկայի եկեղեցին: Մ-ի տարածքում կան մի քանի մատուռներ: Հատկապես նշանավոր է Մ-ի Ս. Հովհաննես եկեղեցին՝ միջնադարյան Հայաստանի հնագույն ու ամենակատարյալ կառույցներից մեկը: Եկեղեցու աղոթասրահը քառանկյունի է (12 մ×11,20 մ), անկյուններում ձգված հսկա տրոմպները այն վեր են ածում ութանկյան, երկրորդ շարք տրոմպները՝ տասնվեցանկյան, որի վրա բարձրացող թմբուկն ավարտվում է 16 փոքր տրոմպների շարքով, դառնալով գմբեթի հիմքը: Թմբուկը դրսից ութանիստ է, անկյունները հատված են եռանկյունաձև խորշերով: Գմբեթածածկ քառանկյունի ծավալի նիստերին կցված են խորաններ՝ ներսից պայտաձև, դրսից հնգանիստ: Արլ. խորանի երկու կողմում, խորանի ծավալից զգալի ցածր, փոքր սենյակներ են: Եկեղեցու վեղարը կոնաձև է, սալածածկ (նախնականը եղել է կղմինդրյա, կորագիծ նկարվածքով), ունի մուտքեր արմ. և հվ. խորաններից, ութ լուսամուտ թմբուկի, ինը՝ աղոթարանի ծավալի վրա: Մ-ի եկեղեցին բազմիցս վերանորոգվել է, հատկապես մեծ վերանորոգում է եղել VII դ.: Եկեղեցու նախնական շարվածքը իրականացված է շագանակամանուշակագույն մեծ չափերի քարերով (շարքի բարձր.՝ 0,62 մ—0,77 մ), վերանորոգվել է նարնջադեղնավուն ոչ մեծ չափի քարերով (շարքի բարձր.՝ 0,47 մ—0,60 մ): Մ-ի եկեղեցին վերանորոգվել է նաև X—XIII դդ.: XVIII դ. եկեղեցին շրջապատված է եղել բարձր պարիսպներով, որը 1889-ին գյուղի քահանան քանդել է տվել և վերանորոգել հուշարձանը (արձանագրությունը ավագ խորանի հվ. մույթի սվաղի վրա է): Եկեղեցու վրա պահպանվել են ոմն Գրիգորաս վանականի երեք արձանագրությունները, որոնցում նա իրեն անվանում է եկեղեցու շինող: Արձանագրությունները թվագրված են VII դ., ըստ որի թվագրվել է նաև եկեղեցին: Սակայն Մ-ի եկեղեցու ուսումնասիրությամբ պարզվել է, որ հիշյալ արձանագրությունները վերաբերում են նրա VII դ. վերանորոգմանը, և որ այն կառուցվել է V դ., որի ապացույցն են ճարտ. խիստ արխաիկ հատկանիշները՝ պատերի մեծ հաստությունը (1,30 մ), խորանների, կամարների ու գմբեթի պայտաձևությունը, նախնական քարերի մեծ չափերը, անկյունային սենյակների մուտքերի բարավորների հավասարաթև արխաիկ խաչերը, քերովբեների գծաքանդակները, արմ. ճակատի խաչքանդակը զույգ թռչուններով, կամարակապ պսակն ավարտող աղավնիների բարձրաքանդակները ևն, որոնք բնորոշ են IV—V դդ.: Այս թվագրումը հաստատում է նաև հուշարձանի հնագույն շարքի վրա պահված հուն. արձանագրությունը: Եկեղեցու թվագրման վերաբերյալ կան նաև այլ տեսակետներ (VI դ., VII դ.):

Մ-ի եկեղեցին բացառիկ է իր ներսի տարածության լուծմամբ, առավել ամբողջական է, ընդարձակ, գմբեթի և ցածի ծավալների կատարյալ հավասարակշռությունը աղոթարանի կերպարին հաղորդում է վեհ անդորրություն, իսկ լայնաթռիչք գմբեթն ու այն կրող զորեղ տրոմպները՝ հզորություն և առնականություն: Մ-ի եկեղեցու կառուցվածքը պլաստիկ մակերեսներով ստեղծված մոնոլիտ համակարգ է՝ իրականացված քարով, աշխատում է որպես շրջված զանգ, որի ծանրության կենտրոնը բարձրության 1/3-ի վրա է: Կառուցվածքի այս համակարգով է պայմանավորված եկեղեցու բացառիկ կայունությունն ու սեյսմակայունությունը, որը միաժամանակ նրա գեղարվեստական արտահայտչականության հիմնական միջոցն է: Մաստարայատիպ են Ոսկեպարի (VI դ.), Արթիկի Մեծ (VII դ.), Հառիճավանքի (VII դ.) և Կարսի Առաքելոց (X դ.) եկեղեցիները:

Մաստարայի Ս. Հովհաննես եկեղեցու ներքին տեսքը





Մաստարայի Ս. Հովհաննես եկեղեցու արևմտյան ճակատը, հատված

Պատկերազարդումը տես 288-րդ էջից հետո՝ ներդիրում:

*Գրկ.* Հովսեփյան Գ., Գրչության արվեստը հին հայոց մեջ, մաս 3, Վաղ-պատ, 1913: Թորամանյան Թ., Նյութեր հայկական ճարտարապետության պատմության, [հ.] 1—2, Ե., 1942—48: Токарский Н. М., Архитектура Армении IV—XIV вв., Е., 1961; Еремян А., О взаимоотношениях армянской и византийской архитектуры IV—VII вв., Е., 1978; Strzygowski J., Die Baukunst der Armenier und Europa..., t. 1—2, Wienn, 1918. *Ա. Երեմյան*

**ՄԱՍՏՈԴՈՆՏ** (< հուն. μαστός — կրծքապտուկ և ὀδούς, սեռական հոլովում՝ ὀδόντος — ատամ), կնճիթավորների կարգի անհետացած կաթնասունների մեծ յուրահատուկ խումբ: Մ-ները ապրել են ուշ պալեոգենում-անթրոպոգենում: Եվրոպայում և Ասիայում մահացել են նեոգենի վերջում, Աֆրիկայում և Հյուսիսային Ամերիկայում՝ անթրոպոգենում: Բարձրությունը 1,5—3,2 մ է: Մ-ները եղել են ելունդաատամնավոր, որոնց մոտ ատամնապսակները կազմված էին առանձին կրծքապտուկանման ելուստներից (այստեղից էլ՝ անվանումը), և կատարատամնավոր, որոնց ատամների վրա գտնվող թմբիկները առաջացրել էին լայնակի կատարներ: Հին Մ-ները ունեին մեկական զույգ ժանիք վերին և ստորին ծնոտներում, ավելի ուշ ձևերը՝ մեկ զույգ ժանիք վերին ծնոտում: Մ-ները պատկանել են տարբեր էկոլոգիական տիպերի (ապրել են ճահիճներում, անտառներում, անտառատափաստաններում ևն): Մ-ների մնացորդները ՍՍՀՄ-ում հայտնաբերված են Ղազախստանում, Միջին Ասիայում, եվրոպական

մասի հարավում: Կատարատամնավոր Մ-ներից ծագել են *փղերը*: Մ-ները կարևոր նշանակություն ունեն կայնոզոյի կոնտինենտալ նստվածքների շերտագրության համար:

**ՄԱՍՏՐՈՅԱՆԻ** (Mastroianni) Մարչելլո (ծն. 1923), իտալացի կինոդերասան: Առաջին մեծ դերը կինոյում Էրկոլեն էր («Օգոստոսյան կիրակի», 1949): 1950-ական թթ. հիմնականում հանդես է եկել կատակերգական ֆիլմերում («Իսպանիա հրապարակի աղջիկները», 1951, «Սիրո օրեր», 1954, «Մի հեկտար երկինք», 1959 ևն): Մ. ստեղծել է արևմուտքի ժամանակակից մտավորականի կերպարներ Ֆ. Ֆելինիի (Մարչելլո, «Քաղցր կյանք», 1959, Գուիդո Անսելմիի, «Ութ և կես», 1962) և Մ. Անտոնիոնիի (Ջովաննի, «Գիշեր», 1960) կինոնկարներում: Հաջողությամբ հանդես է եկել բարքերի («Երեկ, այսօր, վաղը», 1963, «Ամուսնություն իտալական ձևով», 1964) և սոցիալական սուր («Ամուսնալուծություն իտալական ձևով»,



Մ. Մաստրոյանին Դոմենիկոյի դերում (կադր «Ամուսնություն իտալական ձևով» կինոնկարից, 1964, ռեժ. Վ. Դե Սիկա)

1961) կատակերգություններում: Ստեղծել է նաև ՍՍՀՄ-ում երկրորդ հայրենիք գտած իտալացի ռազմագերի Անտոնիոյի կերպարը («Արևածաղիկներ», 1971):

**ՄԱՍՐԵՆԻ**, վարդազգիների ընտանիքի վայրի բույսերի տեսակներ: Սովորաբար թփեր են (մինչև 1 *մ* բարձրության), երբեմն՝ ծառանմաններ (մինչև 3 *մ*), հազվադեպ՝ լիաններ: Ընձյուղները պատված են սուր փշերով: Տերևները բարդ են՝ դասավորված կենտ փետրաձև, տերևակոթունի վրա՝ 3—7, երբեմն՝ մինչև 9 տերև:




Մասրենի. *ա*. ծաղկած ճյուղը, *բ*. ցողունի մասը փշերով, *գ*. պտուղը

Ծաղիկները՝ մեկական կամ հավաքված հովանոցավոր ծաղկաբույլում, երկսեռ են, սպիտակ, վարդագույն, կարմիր, դեղին, ունեն բազմաթիվ առէջներ: Պտուղը ընկուզիկ է, բազմասերմ, պտղաբույլը՝ մսալի, ոչ հյութալի, արտաքին մաշկը՝ կաշենման, հաստ: Պտղամաշկը՝ կարմիր, կանաչ, վարդագույն, դեղնակարմրավուն, կանաչադեղնավուն: Մ-ի պտուղը պարունակում է շաքարներ, դաբաղանյութեր, հանքային տարրեր, հարուստ է վիտամիններով (հատկապես C): Պտուղներից պատրաստում են մուրաբա, ստանում հյութ, յուղ ևն: Բժշկության մեջ օգտագործում են որպես վիտամինային հումք (թուրմի, հյութերի ևնի ձևով), յուղը կիրառվում է տրոֆիկ խոցերի, մաշկային որոշ հիվանդությունների բուժման համար: Ծրտաչոր-րադիմացկուն բույս է: Տարածված է Հյուսիսային կիսագնդում, առավելապես՝ բարեխառն և մերձարևադարձային գոտիներում: Հայտնի է մոտ 350—400 (այլ տվյալներով 100—250), ՍՍՀՄ-ում՝ մինչև 250 (60—150) տեսակ: ՀՍՍՀ-ում տարածված են ա ռ ա տ ա փ ո ւ շ (R. pimpinellifolia), Ս ա ս ն ո վ ս կ ո ւ (R. Sasnovsckii), Ղ ա զ ա ր յ ա ն ի (R. Kazarianii), Հ ա զ ա ր ա թ ե ր թ (R. centifolice) Մ. ու այլ տեսակներ:

*Ա. Մարգարյան*

**ՄԱՍՐԻԿ**, Մ ա զ ր ա, Ս ա վ դ ի ց, գետ Հայկական ՍՍՀ-ում, Սևանի ավազանում: Երկարությունը 45 *կմ* է, ավազանը՝ 685 *կմ*²: Կազմվում է Արևելյան Սևանի լեռնաշղթայից սկիզբ առնող օժանդակներով: Լեռնահարթավայրային գետ է: Հոսում է տրոգային, ապա կանիոնանման հովիտներով: Մասրիկի դաշտում ընթացքը դանդաղում է, առաջացնում է մեանդրներ և զգալի չափով ճահճացած հովիտ, ապա՝ թափվում Սևանա լիճը: Սնումը գերազանցապես ձնաանձրևային է, նաև՝ ստորերկրյա: Հորդանում է գարնանը: Միջին տարեկան ծախսը՝ 3,01 *մ*³/*վրկ* (Տորֆ դիտակետ), հոսքը՝ 94,8 մլն *մ*³: Ջրերն օգտագործվում են ոռոգման համար:

*Գ. Աբրահամյան*

**ՄԱՍՐԻԿԻ ԴԱՇՏ**, գտնվում է Հայկական ՍՍՀ-ում, Սևանի ավազանի հարավ-արևելքում, Մասրիկ գետի ստորին հոսանքի շրջանում, 2000 *մ* բարձրության վրա: Սևանի դեպի լիճը թեքված հարթ մակերեվույթ: Ծածկված է լճային, գետաբերուկային և պրոլյուվիալ նստվածքների հզոր շերտով, արմ-ում՝ նախկին Գիլլի լճի տեղում կա տորֆ: Մ. դ. գյուղատնտ. շրջան է: Մշակում են կարտոֆիլ, ցորեն, ծխախոտ, բանջարեղեն:

**ՄԱՍՐՈՒՑ ԱՆԱՊԱՏ**, ճարտարապետական հուշարձան ՀՍՍՀ Մարտունու շրջանի Ձորագյուղ բնակավայրի արևելյան եզրին: Արտաքինից ուղղանկյուն, ներսից եռաբսիդ, անկյուններում չորս ավանդատներով գմբեթավոր ոչ մեծ կառույց է: Պատերը շարված են կոպիտ մշակված քարերից, իսկ կառուցողական առավել պատասխանատու մասերը (գմբեթակիր կամարները, թմբուկը և գմբեթը)՝ համեմատաբար կանոնավոր մշակված քարերից: Հիմնովին վերակառուցվել է հվ-արմ. ավանդատունը: Գմբեթը և խաչաթևերը ծածկված են եղել հարթ, ուղղանկյուն սալերով: Մ. ա-ի կառուցման թիվը հայտնի չէ, սակայն իր ձևերով այն մոտ է Սյունիքի ճարտ. դպրոցի IX—X դդ. սահմանագծում կառուցված հուշարձաններին:

Գրկ. Մ ն ա ց ա կ ա ն յ ա ն Ս. Խ., Հայկական ճարտարապետության Սյունիքի դպրոցը, Ե., 1960: Դիվան հայ վիմագրության, պր. 4, Ե., 1973 (կազմ. Բարխուդարյան Ս. Գ.):

*Ս. Մնացականյան*

**ՄԱՍՈՒԴԻ** (IX դ. վերջ—956 կամ 957), արաբ պատմիչ, ճանապարհորդ: Եղել է Իրանում, Հնդկաստանում, Աֆրիկայում, Հայաստանում, Միջին Ասիայում: Նրա բազմաթիվ (շուրջ 20) աշխատություններից պահպանվել են միայն երկուսը՝ «Ոսկու լվացատեղեր և գոհարների հանքեր», ուր տեղեկություններ է հաղորդում երկրի, ծովերի ու լեռների, ինչպես նաև աշխարհի տարբեր ժողովուրդների (հույների, հռոմեացիների, արաբների՝ մինչև X դ. կեսը) մասին, և աշխարհագրական փոքրիկ երկ: Արժեքավոր է Արայի և Շամիրամի մասին հաղորդած արաբ. զրույցը, որը տարբերվում է մեզ հասած այլ պատումներից: Մանրամասն տեղեկություններ է հաղորդում Կովկասի ցեղերի մասին:

Գրկ. Տ ե ր-Ղ և ո ն դ յ ա ն Ա., «Արա և Շամիրամ» առասպելի մի արձագանքը արաբ պատմիչ Մասուդու մոտ, «ՊԲՀ», 1965, № 4:

*Ա. Տեր-Ղևոնդյան*

**ՄԱՍՈՒՆՔ**, սրբացված անձնավորության մարմնի (երբեմն նրա իրերի) մնացորդ, նշխար: Քրիստոնեության մեջ Մ-ի պաշտամունքը սահմանվել է III դ., որը Բյուզանդական կայսրության մեջ մերժել են պատկերամարտները: 787-ի Տիեզերական 7-րդ (Նիկեայի 2-րդ) ժողովը, Մ-ին վերագրելով հրաշագործ զորություն, վերահաստատեց նրա երկրպագությունը, որն այնուհետև դարձավ սրբապաշտամունքի ձևերից մեկը: Միջին դարերում Մ-ները արտադրվել են գլխավորապես վանքերում: Սնահավատության վրա հիմնված Մ-ի պաշտամունքը եկեղեցին օգտագործել է կրոնն ամրապնդելու և նվիրաբերությունների միջոցով հավատացյալներից եկամուտներ կորզելու համար:

Գրկ. О святых мощах. [Сб. материалов], М., 1961.

**ՄԱՎԱՍ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտունու շրջանում, շրջկենտրոնից 34 *կմ* հարավ-արևմուտք: Միավորված է Սխտորաշենի կոլտնտեսության հետ: Մ-ում պահպանվել է Մամասերի վանքը (XIII դ.), Երեք Մանկունք եկեղեցին (1854):

**ՄԱՎԻՅԱՆ** Միհրան Մինասի (ծն. 26.7. 1900, ք. Աղաբազար), սփյուռքահայ հասարակական գործիչ: Ֆրանսիայի կոմկուսի անդամ 1926-ից: Ֆրանսահայ համայնքի հասարակական կյանքի գործուն մասնակից-կազմակերպիչներից, եղել է ՀՕԿ-ի վարչության անդամ, *ֆրանսահայ մշակութային միության* հիմնադիրներից է: Գերմ. օկուպացիայի տարիներին մասնակցել է ֆրանս. *Դիմադրության շարժմանը*, 1944-ին գեստապոյականները ձերբակալել են Մ-ին և դատապարտել մահվան. եղել է Օսվենցիմի, Բուխենվալդի համակենտրոնացման ճամբարներում, որտեղից փրկվելով, վերադարձել է Ֆրանսիա: Գրել է «Ոճիրի անդրաշխարհեն» (1976) գիրքը (պատկերել է ֆաշիստների վայրագությունները):

**ՄԱՎՅԱՆ** Վահրամ Հակոբի (ծն. 27.6. 1926, Երուսաղեմ), հայ գրող: Նախնական կրթությունն ստացել է տեղի Թարգմանչաց վարժարանում: 1944-ին ավարտել է «Բիշըփ Գոբաթ» անգլ. կոլեջը: 1944—58-ին դասավանդել է Նիկոզիայի

Վ. Հ. Մավյան

Մելիքյան ազգային վարժարանում և Մելքոնյան կրթական հաստատությունում: 1958-ին Մ. մեկնել է Անգլիա, 1961-ին ավարտել Բելֆաստի «Քուինզ յունիվըրսիթի»-ի անգլ. գրականության, փիլիսոփայության, հոգեբանության եռամյա դասընթացները: 1963-ից հաստատվել է Լիսաբոնում, սկսել պաշտոնավարել Կյուլպենկյան հիմնարկության հայկ. բաժնում: Աշխատանքի բերումով այցելել է աշխարհի հայաշատ կենտրոնները, ուսումնասիրել նրանց հուզող կրթական, մշակութային և այլ հարցեր: Բազմիցս եղել է Հայաստանում:

Մ. գրական ասպարեզ է իջել որպես բանաստեղծ: Նրա քնարական գործերն ամփոփված են «Համեցող վերադարձ» (1956, Երուսաղեմ) ժողովածուում: 1958-ից սկսած գրել է պատմվածքներ, վիպակներ, օրագրություններ: Հրատարակվել են Մ-ի «Հայու բեկորներ» (1967, «Անկապ օրագիր» (1968, Երուսաղեմ) և «Ամեն տեղ հայ կա» (1977, Երուսաղեմ), «Մխացող հոգիներ» (Երևան, 1977) ժողովածուները: Մ-ի ստեղծագործության հիմնական նյութը աշխարհացրիվ «հայ բեկորներու» հոգեկան տառապանքն է ու պայքարն իրենց հետզհետե կորսվող ազգային դիմագիծը պահպանելու համար:

**ՄԱՎՐԵՐ** (հուն. μαυρός — մուգ, սև), 1. Մավրիտանիայի հիմնական բնակչությանը հնում հռոմեացիների տված անվանումը: 2. Միջին դարերում Արևմտյան Եվրոպայում Պիրենյան թերակղզու և Հյուսիսային Աֆրիկայի արմ. մասի մահմեդական բնակչության անվանումը: 3. Մ. ց ե յ լ ո ն յ ա ն, էթնիկական խումբ Ցեյլոն կղզում (Շրի Լանկա)՝ արաբ վերաբնակիչների (VII—XII դդ.) և բնիկ սինգալուհիների ու թամիլուհիների ամուսնությունից առաջացած սերունդները (ավելի քան 600 հզ., 1980): Խոսում են սինգալերեն կամ թամիլերեն: Դավանում են մահմեդականություն: Ավանդական զբաղմունքը արհեստներն ու առևտուրն են:

**ՄԱՎՐԻԿԻՈՍ** (Μαυρίκιος), Մ ո ր ի կ (ծն. թ. անհտ.—602), Բյուզանդիայի կայսր 582-ից: Հայկ. ավանդությունը Մ-ի ծննդավայր է համարում Օշականը կամ Տարոնը և ենթադրվում է, որ հայրը հայկ. ծագում է ունեցել: Մ. շարունակել է իր նախորդի՝ Տիբերիոսի ժամանակ սկսված պատերազմը Պարսկաստանի դեմ, որն ավարտվել է 591-ին: Մ-ի կառավարման ժամանակ կենտրոնական իշխանության դեմ տեղի են ունեցել խռովություններ ու ապստամբություններ: 602-ին ապստամբած բանակը կայսր է հռչակել Փոկասին (802—810), որի հրամանով Մ. և նրա որդիները սպանվել են:

591-ի պարսկա-բյուզանդական պայմանագրով Հայաստանի՝ Բյուզանդիային անցած մասում Մ. վարել է իշխանների ուժերը և հայոց զորքը ջլատելու քաղաքականություն: Սեբեոսի երկում (գլ. ԺԶ) պահպանված է Պարսից արքա Խոսրով II-ին ուղղած Մ-ի նամակի պատճենը, որտեղ առաջարկում է հայ ավագանուն և զինված ուժերը գաղթեցնել Թրակիա և Արևելք: Մ. ձգտել է Հայաստանում բռնի տարածել *քաղկեդոնականությունը*, Ավանում հիմնել է հայկ. քաղկեդոնական հակաթոռ կաթողիկոսություն: Նրա քաղաքականությունն առաջացրել է հայերի դժգոհությունը: Մ-ի օրոք Շիրակաշատը (այժմ՝ Մավրակ գյուղ), ի պատիվ կայսեր, կոչվել է Մավրիկապոլիս: Միջնադարում Հայաստանում Մ-ի անձի շուրջ ստեղծվել են բազմաթիվ ավանդություններ:

*Գրկ.* Տ ե ր-Ս ա հ ա կ յ ա ն Կ., Հայ կայսերք Բյուզանդիոնի, հ. 1, Վնտ., 1905, էջ 25—125: *Հ. Բարթիկյան*

STELLA CLAVISQUE MARIS INDICI

**ՄԱՎՐԻԿԻՈՍ** (Mauritius), պետություն Հնդկական օվկիանոսի արևմուտքում, Մավրիկիոս, Ռոդրիգես, Ագալեգա կղզիների և Կարգադոս Կարախոս արշիպելագի վրա: Մտնում է Բրիտանական համագործակցության մեջ: Տարածությունը 2045 *կմ*² է, բն. 950 հզ. (1979), հիմնականում՝ հնդիկներ, կրեոլներ, չինացիներ, աֆրիկացիներ: Պաշտոնական լեզուն անգլերենն է, տոմարը՝ գրիգորյանը: Դավանում են, հիմնականում, հինդուիզմ (49%-ը), կան նաև քրիստոնյաներ (33%-ը), մահմեդականներ (14%-ը), բուդդայականներ (4%-ը): Մայրաքաղաքը՝ Պորտ Լուի: Վարչականորեն բաժանվում է 9 օկրուգի:

**Պետական կարգը**: Մ. սահմանադրական միապետություն է: Ընդունված սահմանադրությունն ուժի մեջ է 1968-ից: Պետության գլուխը անգլ. թագավորն է (թագուհին), որին Մ-ում ներկայացնում է գեներալ-նահանգապետը: Օրենսդրական իշխանության բարձրագույն մարմինը միապալատ օրենսդրական ժողովն է: Պրեմիեր մինիստրին և կառավարության (կաբինետի) անդամներին նշանակում է գեներալ-նահանգապետը՝ օրենսդրական ժողովի կազմից: Տեղական իշխանության մարմինները օկրուգային և գյուղական մունիցիպալային խորհուրդներն են: Դատական համակարգը կազմում են գերագույն դատարանը, քաղաքացիական ապելյացիոն դատարանը, քրեական ապելյացիոն դատարանը և մագիստրատի օկրուգային դատարանները:

**Բնությունը**: Կղզիները հրաբխային ծագման են՝ շրջապատված կորալային խութերով: Առավելագույն բարձրությունը 826 *մ* է (Պիտոն լեռ, Մավրիկիոս կղզի): Կլիման արևադարձային ծովային է: Ամենատաք ամսվա (փետրվար) միջին ջերմաստիճանը 26°C է, ամենացուրտ ամսվանը (օգոստոս)՝ 14°C, տարեկան տեղումները՝ 1500—5000 *մմ*: Տարածված են բերրի հողերը: Արևադարձային խիտ անտառները պահպանվել են լեռներում: Հարուստ է թռչնաշխարհը:

**Պատմական տեղեկանք**: Մավրիկիոս կղզին արաբ ճանապարհորդներին հայտնի էր X դ.: Մինչև XVI դ. անմարդաբնակ էր: XVI դ. կղզում հայտնվել են պորտուգալացիները: 1598-ին զավթել են հոլանդացիները և անվանել Մ. [ի պատիվ արքայազն Մորից (Maurits) Օրանցու]: 1715-ին կղզին գրավել են ֆրանսիացիները և վերանվանել Իլ դը Ֆրանս (Ֆրանսիայի կղզի): 1810-ին կղզին անցել է Մեծ Բրիտանիային (1814-ին պաշտոնապես դարձել է գաղութ): XIX դ. սկզբին կղզում բնակություն են հաստատել հնդիկներ ու չինացիներ: 1825-ին ստեղծվել է խորհրդակցական մարմին՝ Օրենսդրական խորհուրդը (անգլ. նահանգապետին կից): 1935-ին ստեղծվել են առաջին արհմիությունները, 1936-ին՝ քաղ. առաջին՝ լեյբորիստական կուսակցությունը (ԼԿ), որն արտահայտում էր մանր և միջին բուրժուազիայի (հիմնականում՝ հնդ. ծագումով) շահերը: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո հակագաղութատիրական պայքարի աճը հարկադրեց Մեծ Բրիտանիային որոշ զիջումներ անել. 1957-ին ընդլայնվեցին Օրենսդրական խորհրդի իրավունքները, 1958-ին մտցվեց համընդհանուր ընտրական իրավունք: 1964-ին կազմվեց ազգային կառավարություն: 1967-ին կղզին ստացավ ինքնակառավարվող տարածքի ստատուս: 1968-ին Մ. դարձավ անկախ պետություն՝ Բրիտանական համագործակցության շրջանակներում: 1968-ից ՄԱԿ-ի անդամ է: 1970-ին Մ-ում ծավալված գործադուլային շարժումը ուժեղացավ 1971-ի վերջին: 1971-ին երկրում մտցվեց արտակարգ դրություն, արգելվեցին Մավրիկիոսցիների մարտական շարժում (ՄՄՇ, հիմնվել էր 1970-ին) կուսակցությանը հարող արհմիությունները: 1972-ին Մ. միացավ «Ընդհանուր շուկային»: 1974-ի փետրվարին վերացվեց ՄՄՇ-ին հարող արհմիությունների ար-

ՄԱՎՐԻԿԻՈՍ

գեյքը: 1976-ին կազմվեց նոր կառավարություն՝ նախկին (1967-ից) պրեմիեր մինիստր Ս. Ռամգուլամի գլխավորությամբ: 1978-ի մարտին վերացվեց արտակարգ դրությունը:

ՍՍՀՄ-ի հետ դիվանագիտական հարաբերություններ հաստատվել են 1968-ին:

**Քաղաքական կուսակցությունները և արհմիությունները**: Լեյբորիստական կուսակցություն (ԼԿ), ստեղծվել է 1936-ին: Մավրիկիոսական սոցիալ-դեմոկրատական կուսակցություն (ՄՍԴԿ), ստեղծվել է 1955-ին: Գործողության մահմեդական կոմիտե (ԳՄԿ), ստեղծվել է 1958-ին: ԼԿ, ՄՍԴԿ և ԳՄԿ կազմում են կառավարական կոալիցիա: Մավրիկիոսցիների մարտական շարժում (ՄՄՇ), ստեղծվել է 1970-ին:

Մ-ի արհմիությունների ֆեդերացիա, հիմնվել է 1960-ին, մտնում է ԱՀՖ-ի մեջ: Մ-ի լեյբորիստական կոնգրես, ստեղծվել է 1963-ին:

**Տնտեսությունը**: Մ. օտարերկրյա կապիտալից կախյալ ագրարային երկիր է: Մշակում են շաքարեղեգ, ծխախոտ, բանան, հալվե, եգիպտացորեն, կարտոֆիլ, բանջարեղեն: Զբաղվում են նաև անասնապահությամբ և ձկնորսությամբ: Կան շաքարեղեգի և թեյի վերամշակման գործարաններ, նավաշինարան: Մշակում են արհեստական ռուբին: Ավտոճանապարհների երկարությունը 2 հզ. *կմ* է (1977): Խոշոր նավահանգիստը Պորտ Լուին է: Կա միջազգային օդանավակայան: Արտահանում է շաքար, թեյ, ծխախոտ, մաթ, ներմուծում՝ սննդամթերք, մեքենաներ և սարքավորում, արդ. ապրանքներ: Առևտրական գործընկերներն են Մեծ Բրիտանիան, Կանադան, ԱՄՆ-ը, ՀԱՀ-ը, Ավստրալիան, Ֆրանսիան, Հնդկաստանը: Դրամական միավորը մավրիկիոսական ռուփին է: 7,7 մավրիկիոսական ռուփին= =1 դոլլարի (1979):

**Լուսավորությունը**: Պարտադիր կրթության մասին օրենք չկա, թեև տարրական դպրոց հաճախում է երեխաների ավելի քան 90%-ը: Մ-ի կրթական համակարգը նման է անգլիականին: 6-ամյա տարրական դպրոց ընդունվում են 5 տարեկանից: Միջնակարգը 7-ամյա է, ունի երկու աստիճան (5+2 տարի ուս. տևողությամբ): Մասնագիտական կրթություն են ստանում միջնակարգ դպրոցի I աստիճանի հիմքի վրա: Տարրական դպրոցի ուսուցիչները պատրաստվում են (երկու տարում) լրիվ միջնակարգ դպրոցի հիմքի վրա: Բարձրագույն կրթություն տալիս է Պորտ Լուիի համալսարանը (1965): Պորտ Լուիում են գտնվում Մ-ի ինստ-ի (42 հզ. գիրք), Մունիցիպալային (ավելի քան 40 հզ. գիրք), Կարնեգիի (25 հզ. գիրք) գրադարանները, Պորտ Լուիի (1885), Պատմության (1950) թանգարանները, Գեղարվեստական պատկերասրահը (1921), Մ-ի հերբարիումը (1960):

*Գրկ*. Burgh-Edwardes S. B. de, The History of Mauritius, L., 1921; Toussaint A., Port Louis. Deux siècles d'histoire, 1735—1935, Port Louis, 1936; Barnwell P. J., Toussaint A., Short History of Mauritius, L., 1949.

**ՄԱՎՐԻՏԱՆԱԿԱՆ ԱՐՎԵՍՏ**, մավրիտանական ոճ, Հյուսիսային Աֆրիկայում և Իսպանիայի հարավում XI—XV դարերում զարգացած միջնադարյան արվեստի պայմանական անվանումը: Մ. ա. ձևավորվել է Արաբական խալիֆաթի (տես *Արաբական մշակույթ*), բերբերների և վեստգոթերի գեղարվեստական ավանդույթների զուգորդման հիման վրա: Այն միասեռ չի եղել. Ալժիրում, Թունիսում, Մարոկկոյում և արաբ. Իսպանիայում (այսպես կոչված իսպանա-մավրիտանական) տարբեր զարգացում ունենալով, Մ. ա. ենթարկվել է բարդ ձևափոխությունների՝ տեկտոնիկ պարզ ձևերից, զուսպ հարդարանքից (Ալժիր քաղաքի Մեծ մզկիթը, 1096) ընդհուպ դեկորատիվ շքեղ զարդարանքը (*Ալհամբրա*, XIII—XIV դդ.): Մ. ա-ին բնորոշ են դեպի ներքին բակ բացվող բազմանավ աղոթասրահով մզկիթները, քառակուսի հատակագծով մինարեթ-աշտարակները, գեղանկարչորեն նախագծված պալատները: Պաշտամունքային և աշխարհիկ շինություններում կիրառվել են սլաքաձև-պայտաձև, բազմաթև և ժանեկազարդ կամարներ, շթաքարե գմբեթներ, ֆրիզներ, քիվեր, արտեսոնադռներ (կեսոնային զարդարուն առաստաղներ), ինչպես և արհեստական մարմարի ու փայտի վրա որմնափորագրություն, հախճապակիով պատված սյուներ, խեցե և ապակե խճազարդ, վիտրաժներ, գունավոր մարմար: Շինությունների և կիրառական արվեստի առարկաների հարդարանքին բնորոշ է բուսական, երկրաչափական և վիմագրական մոտիվներով հարուստ ոճազարդումը:

*Գրկ*. Всеобщая история архитектуры, т. 8, М., 1969.




**ՄԱՎՐԻՏԱՆԻԱ**, Մավրիտանիայի Իսլամական Հանրապետություն (ֆրանս. République Islamique de Mauritanie, արաբ. Ալ-Ջումհուրիա ալ-Իսլամիա ալ-Մուրիտանիա), պետություն Հյուսիս-Արևմտյան Աֆրիկայում: Արմ-ում ողողվում է Ատլանտյան օվկիանոսի ջրերով: Սահմանակից է Ալժիրին, Արևմտյան Սահարային, Մալիին, Սենեգալին: Տարածությունը 1031 հզ. *կմ*² է, բն. 1,54 մլն (1978): Մայրաքաղաքը՝ Նուակշոտ: Վարչականորեն բաժանվում է 11 շրջանի և 1 մայրաքաղաքային օկրուգի:

**Պետական կարգը**: 1978-ի հեղաշրջումից հետո չեղյալ է հայտարարվել 1961-ի սահմանադրությունը: Ըստ 1980-ի սահմանադրական խարտիայի, ամբողջ իշխանությունը կրում է ազգային փրկության զինվորական կոմիտեի նախագահը, որը պետության և կառավարության գլուխն է, պաշտպանության մինիստրն ու զինված ուժերի գլխավոր հրամանատարը:

**Բնությունը**: Ռելիեֆում տիրապետում են ընդարձակ հարթավայրերը և ոչ բարձր սարավանդները (բարձրությունը՝ 250—500 *մ*): Կան երկաթի, պղնձի, վոլֆրամի, աղի խոշոր հանքավայրեր: Կլիման արևադարձային է, անապատային: Հունվարի միջին ջերմաստիճանը 16—20°C է, հուլիսինը՝ 30—32°C, տարեկան տեղումները՝ 50—400 *մմ*: Գետերը մշտական հոսք չունեն: Բուսածածկույթը նոսր է: Տիրապետում են էֆեմեր բույսերը, չորասեր թփուտները և ակացիաները:

**Բնակչությունը**: 3/4-ից ավելին Արևմտյան Սահարայի արաբներ (մավրեր) են: Պաշտոնական լեզուն արաբերենն է, պետական կրոնը՝ մահմեդականությունը, տոմարը՝ գրիգորյանը:

**Պատմական ակնարկ**: Մ-ի հին և միջնադարյան պատմությունը քիչ է ուսումնասիրված: VII—XI դդ. Մ-ի հվ. մասը մտել է Արևմտյան Աֆրիկայի միջնադարյան պետությունների կազմի մեջ, իսկ հս. մասում եղել են բերբերների պետ. կազմավորումներ: XI դ. կեսին Մ-ի տարածքում առաջացել է *Ալմորավյանների* հզոր պետությունը (մինչև 1146-ը), որն ընդգրկել է նաև Մարոկկոյի և Արևմտյան Ալժիրի տարածքները: XIII—XIV դդ. Մ-ի հվ. մասը մտել է միջնադարյան Մալի պետության ազդեցության ոլորտի մեջ, սակայն սերտ կապեր է պահպանել Մարոկկոյի հետ: XIV—XV դդ. Մ. ներխուժած արաբ. մաքիլ ցեղերը արագացրել են XI դ. սկըսած Մ-ի մահմեդականացման ու արաբացման ընթացքը: XV դ. Մ. են մուտք գործել եվրոպացիները՝ պորտուգալացիները և իսպանացիները, այնուհետև՝ հոլանդացիները, անգլիացիներն ու ֆրանսիացիները: 1783-ի Վերսալի հաշտությամբ (Մեծ Բրիտանիա, Ֆրանսիա, Իսպանիա) Մ-ի առափնյա շրջանները ճանաչվել են բացառապես ֆրանս. ազդեցության ոլորտ: 1920-ին երկիրը պաշտոնապես հայտարարվել է ֆրանս. գաղութ՝ Ֆրանսիական Արևմտյան Աֆրիկայի (ՖԱԱ) կազմում: Երկրորդ համաշխարհային պատերազմից (1939—45) հետո ուժեղացել է Մ-ի ազատագրական շարժումը, առաջացել են առաջին քաղ. կուսակցությունները: Ազգային-ազատագրական շարժումն առավել ևս ուժեղացել է 1956-ից հետո, երբ Մարոկկոն հռչակվեց անկախ: 1958-ին ֆրանս. կառավարությունը հարկադրված Մ-ին տվեց ինքնավարություն՝ Ֆրանսիական համագործակցության շրջանակներում: 1960-ի նոյեմբ. 28-ին հռչակվեց Մավրիտանիայի Իսլամական Հանրապետությունը: 1961-ին ընդունվեց սահմանադրություն, և նույն թվականին բոլոր կուսակցությունները միավորվեցին մավրիտանական ժողովրդի կուսակցության (ՄԺԿ) մեջ, որի ներքին քաղաքականության խնդիրը դարձավ «սոցիալական առաջադիմության և ազգի միասնության ապահովումը»: Մ-ի կառավարությունն անցկացրեց վարչա-տերիտորիալ ռեֆորմ, հռչակեց կանանց իրավահավասարություն ևն: Արտաքին հարաբերություններում այն դեմ էր որևէ խմբավորման միանալուն, կողմ էր բոլոր երկրների հետ համագոր-




ծակցելու, ինչպես նաև աջակցելու արաբ. և աֆրիկյան երկրների միասնության համար պայքարին: 1961-ից ՄԱԿ-ի անդամ է: 1964-ին դիվանագիտական հարաբերություններ են հաստատվել ՍՍՀՄ-ի և Մ-ի միջև, 1966—74-ին՝ կնքվել առևտրական, մշակութային և գիտական համագործակցության վերաբերյալ համաձայնագրեր:

1970-ից Մ. համագործակցել է Մարոկկոյի և Ալժիրի հետ՝ Արևմտյան Սահարան իսպանական գաղութացումից ազատագրելու համար: 1975-ի վերջին և 1976-ի սկզբին Մ-ի և Մարոկկոյի զորքերը գրավեցին Արևմտյան Սահարան, որտեղ 1968-ից գործում էր Արևմտյան Սահարայի ազատագրական ճակատը՝ ՊՈԼԻՍԱՐԻՈ-ն: 1977-ին Մ. և Մարոկկոն համաձայնագիր կնքեցին համատեղ պաշտպանության մասին՝ ընդդեմ ՊՈԼԻՍԱՐԻՈ-ի:

1978-ի հուլիսին զինվորական հեղաշրջմամբ Մ-ում արձակվեցին Ազգային ժողովն ու ՄԺԿ, վերացվեց 1961-ի սահմանադրությունը, իշխանությունն անցավ Ազգային վերածնության զինվորական կոմիտեին (ԱՎԶԿ) [1979-ի ապրիլից՝ Ազգային փրկության զինվորական կոմիտե (ԱՓԶԿ)]: 1979-ի օգոստոսին Մ-ի և ՊՈԼԻՍԱՐԻՈ-ի միջև կնքվեց հաշտություն: Մ. հրաժարվեց բոլոր տեսակի հավակնություններից Արևմտյան Սահարայի նկատմամբ:

**Քաղաքական կուսակցությունները և արհմիությունները**: Մավրիտանական ժողովրդի կուսակցություն (ՄԺԿ), երկրի միակ կուսակցությունն է, ստեղծվել է 1961-ին: 1978-ի հուլիսին արձակվել է:

Մավրիտանիայի աշխատավորների միություն, ստեղծվել է 1961-ին:

**Տնտեսա-աշխարհագրական ակնարկ:** Մ. անասնապահական, ագրարային երկիր է՝ զարգացող լեռնահանքային արդյունաբերությամբ: Գյուղատնտեսության հիմքը էքստենսիվ անասնապահությունն ու հողագործությունն են: Զարգացած է նաև արհեստագործությունը: Քոչվորական և կիսաքոչվորական անասնապահությանը բաժին է ընկնում ազգային համախառն արդյունքի 30%-ը: Արոտավայրերը զբաղեցնում են մոտ 40 մլն *հա* տարածություն: Մշակելի հողատարածությունները մոտ 300 հզ. *հա* են: Գյուղատնտ. գլխավոր կուլտուրաներն են աֆրիկական կորեկը և սորգոն, օազիսներում՝ փյունիկյան արմավենին: Մշակում են նաև եգիպտացորեն, լոբի, բատատ, գետնանուշ, բրինձ, զբաղվում՝ արաբական խեժի հավաքմամբ ու ձկնորսությամբ: Նուակշոտ, Նուադիբու, Ակժուժտ քաղաքներում կան ոչ մեծ ՋԷԿ-եր: Զուերատ—Իջիլի շրջանում արդյունահանվում է երկաթի, Ակժուժտ քաղաքի մոտ՝ պղնձի հանքաքար: Սննդի արդյունաբերության ճյուղերից առավել զարգացած է ձկնարդյունաբերությունը: Կան ձկան վերամշակման, ձկնասառնարանային, շաքարի, ալրաղաց, ցեմենտի գործարաններ: Երկաթուղիների երկարությունը 652 *կմ* է (1978), ավտոճանապարհներինը՝ 7,8 հզ. *կմ*: Ծովային հիմնական նավահանգիստներն են Նուադիբուն, Նուակշոտը, որոնցում կան նաև միջազգային օդանավակայաններ:

Արտահանում է երկաթի հանքանյութ, պղնձի կոնցենտրատ, ձկնամթերքներ, գիպս, ներմուծում՝ պարեն, լայն սպառման ապրանքներ ևն: Առևտրական կապերի մեջ է Ֆրանսիայի, Իտալիայի, Մեծ Բրիտանիայի հետ: Դրամական միավորը ուգիյան է: 1 ուգիյան = 0,1 ֆրանս. ֆրանկի (1977):

**Բժշկա-սանիտարական վիճակը և առողջապահությունը**: 1970—75-ին առողջապահության համաշխարհային կազմակերպության տվյալներով ծնունդը կազմել է 1000 բնակչին՝ 44,8, մահացությունը՝ 24,9, մանկական մահացությունը՝ 1000 ողջ ծնվածին՝ 187,0: Կյանքի միջին տևողությունը մոտ 40 տարի է: Մահացության հիմնական պատճառները վարակիչ և մակաբուծական հիվանդություններն են: Տարածված են ամեոբիազը, գրիպը, տուբերկուլոզը, բակտերիային դիզենտերիան, վեներական հիվանդությունները, բորը, մենինգակոկային վարակները, մանկական հիվանդությունները, մալարիան: 1975-ին Մ-ում եղել է 9 հիվանդանոցային հիմնարկ՝ 600 մահճակալով (1000 բնակչին՝ մոտ 4,7 մահճակալ): Աշխատում էին 87 բժիշկ (16,6 հզ. բնակչին՝ 1 բժիշկ) և 1000 բուժքույր: 1972-ին առողջապահության ծախսերը կազմել են պետ. բյուջեի 7%-ը:

Տեսարան Նուակշոտից



Նուադիբու. ազգային կենդանաբանական այգին



Լուսավորությունը: Մեծահասակ բնակչության ավելի քան 95%-ը անգրագետ է: Կրթության համակարգը կառուցվում է ֆրանս. օրինակով: Քոչվորների երեխաները հիմնականում սովորում են դուրանական դպրոցներում: Բարձրագույն կրոնական կրթություն է տալիս Բուտիլիմիտի մահմեդականության ուսումնասիրության ազգային ինստ-ը (հիմնադրվել է 1961-ին): Նուակշոտում են գտնվում Կենտրոնական հանրային, Ազգային վարչական և պատմական գրադարանները:

**Ճարտարապետությունը և կերպարվեստը**: Նեոլիթի ժամանակաշրջանից պահպանված արվեստի հուշարձանները հնագույն նեգրոիդ ժողովուրդների և բերբերների մշակույթի նմուշներ են (ժայռապատկերներ, քարաշեն դամբարաններ): Միջնադարում Մ-ի տարածքում զարգացել է արաբա-բերբերական մշակույթը: XI—XII դարերից քաղաքներում կառուցվել են ներքին բակով, ուղղանկյուն հատակագծով, հարթ ծածկով բնակելի տներ և քառակուսի հատակագիծ ունեցող մինարեթներով մզկիթներ: Մ-ի արմ-ում շենքերը զարդարում են քարի ճնավոր շարվածքով (Տիշիտ), իսկ արլ-ում ճակատները սվաղապատում են, մուտքի բացվածքները երիզում կարմիր-սպիտակ կոպագիծ զարդանախշով (Վալատա): XX դ. Նուակշոտ, Նուադիբու (Պորտ Էտյեն) քաղաքները կառուցապատվում են ժամանակակից շենքերով. շատ քաղաքներ պահպանում են միջնադարյան կերպարը: Ժող. արվեստին բնորոշ են մետաղե, կաշվե, կավե և այլ իրեր:

Գրկ. Новейшая история Африки, 2 изд., М., 1968; Уткин Г. Н., Мавритания (текст к карте 1:2 500 000), М., 1968: Gerteiny A.G., Mauritania. 2 ed., N. Y. [a. o.], 1968; Jacques-Meunié D., Cités anciennes de Mauritanie, P., 1961.

**ՄԱՎՐՈԿՈՐԴԱՏՈՍ** Ալեքսանդրոս (1791—1865), հույն պետական և քաղաքական գործիչ: Սերում էր արիստոկրատական ընտանիքից: Մասնակցել է 1821—29-ի հուն. ազգային-ազատագրական հեղափոխությանը, գլխավորել պահպանողական թևը: Եպիդավրոսում կայացած Ազգային ժողովում (1822-ի հունվար) ընտրվել է Հունաստանի պրեզիդենտ (մինչև 1823-ի ապրիլ): Ունեցել է անգլ. կողմնորոշում: Օթոն թագավորի ժամանակ (1831—62) զբաղեցրել է կառավարական և դիվանագիտական պաշտոններ: 1844-ին և 1854—55-ին եղել է պրեմիեր մինիստր:

**ՄԱՏԱԿԱՐԱՐՈՒՄ**, սոցիալիստական կազմակերպությունների միջև նյութական բարիքների բաշխման և շրջանառության պլանային պրոցես. իրականացվում է կամ անմիջականորեն պլանային առաջադրանքի, կամ դրա հիման վրա կնքվող պայմանագրերի միջոցով: Մ-ման պայմանագրով, պարտադիր պլանային ակտի համաձայն, մատակարարող կազմակերպությունը պարտավորվում է որոշակի ժամկետներում (ժամկետում) գնորդ կազմակերպությանը որպես սեփականություն կամ օպերատիվ կառավարման համար (եթե գնորդը պետ. կազմակերպություն է) հանձնել արտադրանք, իսկ գնորդ կազմակերպությունը պարտավորվում է ընդունել արտադրանքը և վճարել: Մ-ման պայմանագիր է նաև կազմակերպությունների միջև նրանց հայեցողությամբ կնքվող այն պայմանագիրը, որով մատակարարը պարտավորվում է պլանային կարգով չբաշխվող արտադրանքը գնորդին հանձնել պայմանագրի կնքման պահի հետ չհամընկնող ժամկետում: Մ-ման ընդհանուր դրույթները սահմանում են քաղաքացիական օրենսդրության հիմունքները, մանրամասնորեն՝ արտադրատեխնիկական արտադրանքների մատակարարման (1969), ժողսպառման ապրանքների մատակարարման (1969) կանոնադրությունները, իսկ առանձին տեսակի արտադրանքների Մ-ման հարցերը (արտադրանքի առանձին տեսակների Մ-ման հատուկ կանոններ)՝ հատուկ պայմանները: Մ-ման պայմանագրերում նշվում են արտադրանքի անվանումը, քանակը, որակը, Մ-ման պայմանագրի գործողության ընդհանուր ժամկետները, արտադրանքի Մ-ման ժամկետները, արտադրանքի գինը, պայմանագրի ընդհանուր գումարը, հաշվարկների կարգը, տարան, փաթեթավորումը ևն: Անհրաժեշտության դեպքում սահմանվում է նաև արտադրանքի տեսականին, արտադրանքի տեսակն ու կոմպլեկտայնությունը: Մ-ման պայմանագրի խախտումը առաջ է բերում գույքային պատասխանատվություն: *Տ. Բարսեղյան*

**ՄԱՍԱՂ**, տես *Չոհաբերություն*:

**ՄԱՍԱՂԻՍ**, քաղաքատիպ ավան Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտակերտի շրջանում, Թարթառ գետի ափին, շրջկենտրոնից 18 *կմ* հյուսիս-արևմուտք: Մ-ի մոտ՝ Թարթառի վրա գործում են Մատաղիսի ՀԷԿ-ը և ջրամբարը: Միավորված է Չայլուի սովետական տնտեսության հետ: Ունի միջնակարգ դպրոց, գրադարան, ակումբ, կինո, մանկապարտեզ, առողջարան: Մ-ում և շրջակայքում պահպանվել են Շինատեղ, Խալվաթաշեն, Դաստակերտ, Թթոտ, Թորուս (V—XIII դդ.) բնակավայրերի հետքերը, Պառավի, Վարընկաթաղի կամուրջները (VII—XIII դդ.), մատուռներ:

**ՄԱՍԱՆԻ**, պերճանքի առարկա. մատի զարդ: Տարածված է աշխարհի շատ ժողովուրդների մոտ: Ոսկրե Մ-ները երևան են եկել քարի դարում, մետաղե Մ-ները՝ բրոնզի դարում: Հին Եգիպտոսում կրում էին արձանագրություններով, կենդանիների, թռչունների ու փորագրազարդ այլ պատկերներով կնքամատանիներ, որոնց դրոշմները փոխարինում էին տիրոջ ստորագրությանը: Նման Մ-ները հայտնի էին նաև հույներին, էտրուսկներին, հայերին և այլ ժողովուրդների: Հին Հռոմում տարածված էին ոսկե և արծաթե Մ-ները: Միջին դարերում և հետագայում սովորական էին թանկարժեք և կիսաթանկարժեք քարերով ոսկե, արծաթե Մ-ները: Հայկ. լեռնաշխարհում մետաղե Մ-ները հայտնի են III հազարամյակից: Շենգավիթից գտնվել է եզակի Մ., միջուկի ոսկե բարակ ձողի վրա՝ ոսկե թիթեղ: Նույն շրջանի արծաթե Մ. է գտնվել Ջրահովտից: Հայաստանում Մ. տարածված զարդ է դառնում մ. թ. ա. II հազարամյակից. օղակաձև, օձագլուխ ծայրերով, սեգմենտավոր, օձագալար և այլ ձևավորումներով միաձույլ ոսկե, արծաթե, բրոնզե, երկաթե բազմատեսակ Մ-ներ են գտնվել Լճաշենի, Արթիկի, Մեծամորի, Լոռե բերդի, Շիրակավանի և բրոնզի ու երկաթի դարերի այլ հնավայրերի դամբարաններից: Բրոնզե, երկաթե, ինչպես նաև թանկարժեք ու կիսաթանկարժեք (օձաքար, սարդիոն, նռնաքար, քաղկեդոն, լազարիտ ևն) քարերից զեմմաներով Մ-ներ հայտնի են Հայաստանի անտիկ ժամանակաշրջանի հնավայրերից: Դրանց վրա փորագրված են պաշտամունքային-առասպելական, կենցաղային տեսարաններ, կենդանիների, գազանների, թռչունների և այլ խորհրդանշական պատկերներ, դիմանկարներ: Հին հայկ. արվեստի կատարյալ ստեղծագործություն է հայոց թագուհի պատկերող՝ մ. թ. ա. I դ. գեմման, փորագրված դեղին նռնաքարի վրա (պահվում է Փարիզի գրադարանում): Մ. թ. առաջին դարերի Մ-ներ են գտնվել Գառնիում՝ Աթենասի, կենդանագլուխ մարդու և այլ պատկերներով: Ընդելուզման, սևադման և այլ եղանակներով պատրաստված մետաղե Մ-ներ՝ Դվինում և Անիում: Հայ եկեղեցին Մ. կրել արտոնում էր միայն եպիսկոպոսներին: Կնքամատանիները համարվել են թագավորների, իշխանների և այլ բարձրաստիճան անձանց իշխանության խորհրդանշան: Դրանցով հաստատում-կնքում էին նամակներ, հրամանագրեր, պայմանագրեր և այլ վավերագրեր: Այդ նշանակությունն ունեին Հայաստանում հնում տարածված, այսպես կոչված՝ «վարազագիր» Մ-ները: Ինչպես զանազան ժողովուրդների, այնպես էլ հայերի մոտ հարատևում է հարսին նշանի Մ. հանձնելու սովորույթը՝ իբրև զույգերի միությունը վավերացնելու խորհրդանշան:

Գրկ. Ղաֆադարյան Կ. Գ., Դվին քաղաքը և նրա պեղումները, [հ.] 1, Ե., 1952: Առաքելյան Բ. Ն., Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դդ., [հ.] 1, Ե., 1958: Սարդարյան Ս. Հ., Նախնադարյան հասարակությունը Հայաստանում, Ե., 1967: *Գ. Կարախանյան*

**ՄԱՏԵՅԿՈ** (Matejko) Յան (1838—1893), լեհ նկարիչ: Սովորել է Կրակովի Գեղեցիկ արվեստների դպրոցում (1825—58, 1873-ից՝ դիրեկտոր), Մյունխենի (1859) և Վիեննայի (1860) Գեղարվեստի ակադեմիաներում: 1860-ից ստեղծագործել է Կրակովում: Նկարել է հիմնականում Լեհաստանի պատմության շրջադարձային դեպքերին նվիրված բազմաֆիգուր կոմպոզիցիաներ՝ ձգտելով արձագանքել մոտ ժամանակների և արդի քաղ. իրադարձություններին: Սկզբնական աշխատանքներում ազգային շահերին դավաճանող շլյախտային հակադրել է հայրենասերների պաթետիկ-ողբերգական կերպարներ («Ստանչիկ», 1862, «Ռեյտան», 1866), այլաբանորեն պաշտպանվել պաշտոնական քննադատությունից («Մատեյկոյի դատապարտումը», 1867, բոլորն էլ՝ Ազգային թանգարան, Վարշավա): 1870—1880-ական թթ. մարտանկարներում և պատմական կոմպոզիցիաներում իշխում է գործողության տպավորիչ դրամատիզմը («Գրյունվալդի ճակատամարտը», 1878, Ազգային թանգարան, Վարշավա, «Պրուսական տուրք», 1882, Ազգային թանգարան, Կրակով): Ստեղծել է նաև դիմանկար-

ներ և բնանկարներ, որմնանկարներ (Կրակովի Կույս Մարիամ կոստյոլում, 1889—1891):

**ՄԱՏԵՆԱԳԵՏ**, 1. մատենագիտական աշխատանքի մասնագետ՝ տպագիր և ձեռագիր երկերի վերաբերյալ բանավոր ու գրավոր տեղեկանքներ տվող, մատենագիտական ձեռնարկներ կազմող: Հնում Մ-ի հատուկ մասնագիտություն չկար, մատենագիտական աշխատանք կատարում էին պատմիչները, փիլիսոփաները, բժիշկները ևն, ինչպես, օրինակ, հին ու միջնադարյան Հայաստանում՝ Մովսես Խորենացին, Հովհաննես Սարկավագը, Կիրակոս Գանձակեցին, Գրիգոր Աբասի որդին, Ամիրդովլաթ Ամասիացին և ուրիշներ: XIX դ. հայ նշանավոր մատենագետներն են Մ. *Միանսարյանը*, Գ. *Զարբհանալյանը*, Հ. *Տաշյանը*, XX դ.՝ Ա. *Ղազիկյանը*, Գ. *Լևոնյանը*: Ներկայումս Մ. հատուկ մասնագիտություն է: Աշխարհի շատ երկրներում կա մատենագիտական միջնակարգ և բարձրագույն կրթություն: ՀՍՍՀ-ում այն իրականացվում է Երևանի Խ. Աբովյանի անվ. մանկավարժական ինստ-ում (կուլտուրայի ֆակուլտետ, գրադարանային բաժին) և Էջմիածնի ակումբագրադարանային տեխնիկումում:

2. Գրքի պատմության, գրադարանային և գրահրատարակչական գործի, մասամբ նաև բնագրագիտության, աղբյուրագիտության մասնագետ, լայն առումով՝ գրքագետ: Գրքերի գիտակ իմաստով Մ. տերմինը հայերենում գործածվել է V դարից (տես նաև *Մատենագիտություն*):

**ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ**, 1. բ ի բ լ ի ո գ ր ա ֆ ի ա (< հուն. βιβλίον — գիրք և ...*գրաֆիա*), տպագիր և ձեռագիր երկերի վերաբերյալ տեղեկատվություն: Նպատակն է ընթերցողին կողմնորոշել տարբեր բնագավառների վերաբերող գրքերի, պարբերականների, հոդվածների ու տպագիր այլ երկերի հսկայական զանգվածում: Գիտական ամեն մի ուսումնասիրություն սկսվում է Մ-յամբ, որի շնորհիվ ուսումնասիրողը իմանում է, թե նախքան իր աշխատանքը տվյալ հարցի վերաբերյալ ինչ է գրվել: Երբեմն Մ. են համարվում նաև գրախոսությունները: Մատենագիտական տեղեկատվությունն իրականացվում է բանավոր և գրավոր: Բանավոր տեղեկանքներ տրվում են գլխավորապես գրադարաններում: Գրավոր մատենագիտական տեղեկատվությունն իրականացվում է մատենագիտական ձեռնարկների՝ գրականության ցանկերի, ուղեցույցների, գրացուցակների, քարտարանների, ինչպես և գրականության տեսությունների, մատենագիտական ծանոթագրությունների (անոտացիաների), բնագրերի համառոտման, պարբերականներում տրվող գրացանկերի և այլ միջոցներով: Մատենագիտական յուրաքանչյուր ձեռնարկ և ձեռնարկների ամբողջությունը նույնպես կոչվում է Մ.:

Յուրաքանչյուր Մ-յան մեջ գլխավորը երկերի նկարագրությունների շարքն է: Կան տպագիր երկերի նկարագրության միասնական կանոններ: Կարգային (սիստեմատիկ) Մ-ների մեջ օգտագործվում են տպագիր երկերի դասակարգման աղյուսակներ, որոնցից տարածված է Տասնորդական դասակարգումն իր տարբերակներով: Հասարակական նշանակության և ընթերցողական հատկացվածության տեսակետից Մ-ները լինում են՝ արձանագրական կամ հաշվառման գրանցային (շարունակաբար արձանագրվում է որևէ երկրի, հանրապետության ընթացիկ տպագիր արտադրանքը), գիտա-օժանդակ (հասցեագրվում է գլխավորապես որևէ բնագավառի մասնագետների), որի մի տեսակն է համառոտագրականը (ռեֆերատիվ՝ որևէ բնագավառի նորագույն երկերը ներկայացվում են համառոտված), հանձնարարական (ներկայացվում է ընթերցողների տվյալ խմբին հանձնարարվող ընտրովի գրականություն), գրադարանային (գրադարանների քարտային և տպագիր գրացուցակներ), հրատարակչական, գրավաճառային: Նյութի ընդգրկման ծավալի ու բովանդակության տեսակետից տարբերվում են ընդհանուր (տարբեր բնագավառների գրականություն ընդգրկող), ճյուղային (որևէ բնագավառի գրականություն ընդգրկող), ազգային, պետ., երկրագիտական, անհատական (պերսոնալիա՝ մեկ անհատի երկերը ներկայացնող) Մ-ները: Վերջինի մի տարբերակն է կենսամատենագիտությունը (տրվում է նաև անհատի կենսագրությունը): Ժամանակագրական ընդգրկման տեսակետից Մ. լինում է ետադարձ (անցյալում հրատարակված գրականություն ընդգրկող) և ընթացիկ: Ըստ ձևի Մ-ները լինում են առանձին գրքով հրատարակված, պարբերական, ներգրքային (որևէ ուսումնասիրության, ձեռնարկի մեջ), ներամսագրային, քարտային ևն, ըստ նյութերի դասավորման՝ այբբենական, կարգային, ժամանակագրական, առարկայական: Մ-յան մի տեսակն են ձեռագրացուցակները: Կա երկրորդ աստիճանի Մ. (մատենագիտության Մ.), որն ի մի է հավաքում և ներկայացնում տարբեր բնույթի Մ-ներ: Մ. է կոչվում նաև այն առարկան, որ նվիրված է Մ. կազմելու կանոններին, մատենագիտական աշխատանքի տեսական ընդհանրացմանը, Մ-յան պատմությանը (ռուս. библиографиоведение, հայերեն նաև մատենաբանություն):

2. Մ. լայն առումով (բ ի բ լ ի ո լ ո գ ի ա, < հուն. βιβλίον — գիրք և ...*լոգիա*, հայերեն նաև գ ր ք ա գ ի տ ու թ յ ու ն), վերոհիշյալի հետ ընդգրկում է նաև գրքի ու տպագրության պատմությունը, ձեռագրագիտությունը, գրադարանային գործի պատմությունը, մասամբ՝ աղբյուրագիտությունը ևն:

Մ., լինելով գրի ու գրականության մշտական ուղեկիցը, սկզբնավորվել է հազարամյակներ առաջ՝ հին արևելյան երկրներում: Պահպանված հնագույն հուշարձաններից են եգիպտական պապիրուսների վիմագիր գրացուցակը՝ փորագրված Էդֆու քաղաքի (Եգիպտոս) տաճարում (մ. թ. ա. XVIII դ.), Նինվեի (Ասորեստան) գրադարանի սալիկային գրացուցակը (մ. թ. ա. VII դ.), Կալիմաքոսի կազմած Ալեքսանդրիայի գրադարանի գրացուցակը (մ. թ. ա. III—I դդ.), Հին Հունաստանի ու Հռոմի գրադարանների գրացուցակները ևն:

Ռուս. Մ. սկիզբ է առել X դ., արագորեն զարգացել է XVIII—XX դդ. տպագրության, գրավաճառության, գրադարանների արագ աճի հետ: Այն մեծ թափ ստացավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո: Հրատարակված են ռուս դասականների անհատական մեծարժեք Մ-ները, ռուս. մամուլի, հնատիպ գրքի և գիտության գրեթե բոլոր ճյուղերին վերաբերող Մ-ներ, ռուս մատենագիտության Մ., երկրագիտական մի շարք Մ-ներ ևն: 1920-ին հիմնվել է Ռուսաստանի կենտրոնական գրապալատը, որը 1936-ից դարձավ ՍՍՀՄ համամիութենական գրապալատ (տես *Գրապալատ համամիութենական*): Այժմ այն հրատարակում է 10 անուն մատենագիտական պարբերական: Գիտատեխնիկական տեղեկատվության համամիութենական ինստ-ը (ВИНИТИ) լույս է ընծայում «Ռեֆերատիվնի ժուռնալ»-ը («Реферативный журнал») գիտության ու տեխնիկայի տարբեր բնագավառներին նվիրված շարքերով: ՍՍՀՄ-ում ամեն տարի հրատարակվում են մոտ 10.000 մատենագիտական ձեռնարկներ ու պարբերականներ, ներգրքային և այլ տեսակի Մ-ներ:

Եվրոպական Մ. անմիջական ժառանգորդն է հունա-հռոմեական Մ-յան: Վաղ միջնադարի եվրոպական նշանավոր մատենագետներն էին Հերոնիմոսը (IV—V դդ.), Գեննադիոս Մարսելցին (V դ.), Իլդեֆոնս Տոլեդացին (VI դ.), Կասիոդորոսը (V—VI դդ.): Ետտպագրային շրջանի առաջին խոշոր մատենագետը և տպագիր Մ-յան հիմնադիրը շվեյցարացի Կոնրադ Գեսներն է:

Հայկական Մ-յան ընդգրկման ոլորտը հայերեն տպագիր ու ձեռագիր երկերն են (ըստ այլ տեսակետի՝ նաև հայագիտական երկերը բոլոր լեզուներով): Հայկական Մ. զարգացման 3 շրջան է ունեցել՝ ա. հին և միջնադարյան (մինչև XVII դ. վերջերը), բ. նոր (XVIII դարից մինչև 1920-ը), դ. սովետական և սփյուռքահայ շրջան (1920-ից սկսած): Հայկ. Մ. ծագել է հեթանոսական Հայաստանում: Նրա նմուշներից են եղել մեհենական և արքունի գրադարանների գրացուցակները: Քրիստոնեական շրջանի հայկ. Մ-յան հնագույն նմուշներից են Աստվածաշնչի հայտնի (կանոնական) և ծածուկ կամ սուտ (պարականոն) գրքերի ցուցակները: V դարից սկսած հայկ. Մ-յան մի քանի տեսակներ երևան եկան, որոնցից են սուրբ (աստվածաշնչային կանոնական և եկեղեցու հայրերի), արտաքին (աշխարհիկ գիտություններին նվիրված), նուրբ (գերազանցապես իմաստասիրական) գրքերի ցանկերը, շարականների հեղինակների Մ-ները («Վասն շարականց, թե ով ոք է ասացեալ», «Վասն անունց յօրինողաց գշարականաց» ևն), որպիսիք կազմել են Առաքել Սյունեցին, Գրիգոր Տաթևացին և ուրիշներ: Մովսես Խորենացուց և Ղազար Փարպեցուց սկիզբ է առել հայ պատմական գրականության Մ.: Հետագա մի շարք պատմիչներ (Հովհաննես Դրասխանակերտցի, Ստեփանոս Ասողիկ, Մխիթար Անեցի, Կիրակոս Գանձակեցի, Մխիթար Այրիվանեցի և ուրիշներ) կազմել են իրենցից առաջ եղած պատմիչների ու նրանց երկերի ցանկերը, երբեմն՝

ծանոթագրություններով: Միջնադարյան Հայաստանում կազմվել են նաև տոմարագիտական, աշխարհագրական, բժշկ., ինչպես և ուս. ու ընդհանուր Մ-ներ: Գրադարաններում կազմվում էին ձեռագրերի գրացուցակներ (պահպանվել են Սաղմոսավանքի, Ամրդոլու վանքի գրացուցակները): Միջնադարի նշանավոր հայ մատենագետներից են *Հովհաննես Սարկավագը*, կազմել է Հայաստանի կրթական հիմնարկներում ուս. ծրագրով հանձնարարելի գրականության Մ. («Կարգադրութիւն...»), Գրիգոր Աբասի որդին (XIII դ.), կազմել է «Գիրք պատճառաց» մատենագիտական ժողովածուն՝ նվիրված Հին և Նոր կտակարանների ուսումնասիրությանը, Վարդան Բաղիշեցին (XVII դ.), կազմել է Ամրդոլու վանքի (Բաղեշ) գրացուցակը և «Վասն պատմագրաց հայոց» Մ. են: Հայկ. նոր Մ. հետևյալ ուղղություններով զարգացավ. ա. ընդհանուր-ազգային, որի ներկայացուցիչներն էին Մ. *Միանսարյանը*՝ հայ գիտական Մ-յան հիմնադիրը («Կովկասի և Անդրկովկասի մատենագիտություն», հ. 1, 1874—76, ռուս.), Գ. *Զարբհանալյանը* («Հայկական մատենագիտություն», 1883, «Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնյաց», 1889) և Ա. *Ղազիկյանը* («Հայկական նոր մատենագիտություն և հանրագիտարան հայ կյանքի», 1909—12): բ. Հրատարակչական գրավաճառային Մ., որ հրատարակվում էր գրացուցակների ձևով՝ ներկայացնելով տպարանների, հրատարակչությունների լույս ընծայած հայերեն գրականությունը և գրատների ու գրախանութների ունեցած գրքերը: Հայ առաջին տպագիր Մ. 1710-ին Վենետիկում լույս ընծայած Խաչատուր Էրզրումեցու «Բանք և քարոզք...» գրքում տպագրված գրացուցակն է, որը ներկայացնում է տպագրիչ Ա. Բորտոլիի հայերեն հրատարակությունները: Իրենց հրատարակությունների գրացուցակները հաջորդաբար տպագրել են Վենետիկի (1810-ից) և Վիեննայի (1859-ից) Մխիթարյանները, Կ. Պոլսի, Էջմիածնի, Երուսաղեմի, Տփղիսի հայ տպարանները, գրադարաններն ու գրախանութները: գ. Գրադարանային Մ. արտահայտված է Տփղիսի, Երևանի, Շուշիի, Բաքվի, Մոսկվայի և հայոց այլ գրադարանների գրացուցակներով: դ. Ձեռագրացուցակներ, որոնք ներկայացնում են տարբեր վայրերում գտնվող հայ ձեռագրային հավաքածուները: Առանձին գրքով հրատարակված առաջին ձեռագրացուցակը Դ. Շահնազարյանցի «Մայր ցուցակ ձեռագիր մատենից Ս. Աթոռոյն Էջմիածնի»-ն է (1863), ներկայացնում է Էջմիածնի մատենադարանի ձեռագրերը: Ձեռագրացուցակագրությամբ զբաղվել են Հ. Տաշյանը («Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա», 1895), Հ. Աճառյանը, Գ. Սրվանձտյանը, Ս. Պարոնյանը, Բ. Սարգիսյանը, Ն. Մառը, Ֆ. Մակլերը, Ֆ. Կոնիբերը և այլ հայագետներ: ե. Հայոց պարբերական մամուլի Մ., որ սկիզբ առավ 1850-ական թթ., և առաջին ծավալուն երկն էր Ն. Հարոյի (Ն. Տեր-Հարությունյան) «Հայոց մամուլը Ռուսաստանում և Կովկասի մեջ» (1878), ապա՝ Գ. Գալեմքյարյանի «Պատմություն հայ լրագրության...», հ. 1 (1893) են: զ. Ճյուղային Մ., որից նկատելի զարգացում ապրեց հայագիտական Մ.: Հայ հին ու միջնադարյան հեղինակների երկերը ներկայացնող մատենագիտական աշխատություններից են Ս. Սոմալյանի իտալ. երկու երկերը՝ «Պատկեր նախնական թարգմանութեանց ի հայ բարբառ» (1825) և «Պատկեր հայոց դպրութեան» (1829), Ս. Նազարյանի ռուս. երկու աշխատությունները՝ «Թռուցիկ հայացք մինչև XIII դ. վերջի հայ գրականության պատմության» (1844), «Ակնարկ հայ նորագույն ժամանակների մատենագրության պատմության» (1846), Հ. Դուլայեի «Գրացուցակ վաղ ժամանակներից մինչև XVII դարը եղած հայերեն բոլոր աշխատությունների» (1853, անգլ.), Ք. Պատկանյանի «Հայ պատմագիրների երկասիրութեանց ցուցակ»-ը (ֆրանս., ռուս., հայերեն, 1860, 1879, 1880), Կ. Եզյանի «Հայագիտություն...»-ը (1890), Պ. Ֆերհաթյանի «Ցուցակ եվրոպական-հայկական հրատարակության» (1896—1910, 1919), Ս. Պարոնյանի «Հայկական մատենախոսություն» («Բանասեր», 1900), Գ. Շրումպֆի «Ուսումնասիրությունք հայ լեզվի և մատենագրության յԱրևմուտս» (1895), Կ. Կոստանյանի «Հայագիտությունն Արևմտյան Եվրոպայում» (1910) են: Հայ գրքի արձանագրական Մ-յան դեր էին կատարում պարբերականներում, հատկապես «Հանդես ամսօրյա»-ում տպագրվող հայերեն ընթացիկ հրատարակությունների ցանկերը:

Հայկ. Մ-յան սովետական շրջանը բնորոշվում է հետևյալով. 1. ՀՍՍՀ-ում մատենագիտական աշխատանքը դարձավ պետական, 2. Մ-յան գլխավոր կենտրոնը աշխարհում դարձավ Երևանը, 3. Մ. հըստակորեն անջատվեց բանասիրությունից, որպես ինքնուրույն բնագավառ, 4. կազմակերպվեց մատենագիտական միջնակարգ և բարձրագույն կրթություն: ՌՍՖՍՀ Ժողկոմխորհի 1920-ի հունիսի 30-ի «Մատենագիտության գործը ՌՍՖՍՀ-ում Լուսավորության ժողովրդական Կոմիսարիատին հանձնելու մասին» որոշմամբ պետությունն իր ձեռքը վերցրեց Մ-յան կազմակերպման գործը: Դրա հիման վրա ՀԽՍՀ Ժողկոմխորհի 1922-ի դեկտ. 27-ի որոշմամբ ստեղծվեց ՀԽՍՀ պետ. գրապալատ (տես *Գրապալատ ՀՍՍՀ*), որը պետք է գրանցեր, հաշվառման ենթարկեր հանրապետությունում լույս տեսնող տպագիր արտադրանքը: 1926-ին գրապալատը լույս ընծայեց «Տպագրության տարեգիր» մատենագիտական պարբերականի անդրանիկ (1925) համարը: Դա հայ առաջին մատենագիտական պարբերականն էր: Մինչև 1928-ը լույս է տեսել տարեկան մեկ, ապա՝ չորս համար: 1935-ից կոչվել է «Գրքի տարեգիր», այժմ դարձյալ՝ «Տպագրության տարեգիր»: ՀՍՍՀ Գրապալատը 1940—50-ական թթ. հրատարակել է Հ. Պետրոսյանի մատենագիտական երկերը՝ հայ գեղարվեստական գրականությանը և պարբերական մամուլին վերաբերող: 1923-ից սկսեցին լույս տեսնել Հայպետհրատի հրատարակչական գրացուցակները, 1936-ից՝ «Թեմատիկ պլան»-ները: Այդպիսիք ամեն տարի լույս են ընծայում ՀՍՍՀ հրատարակչությունները: 1934-ին Երևանում լույս տեսավ Գ. Լևոնյանի «Հայոց պարբերական մամուլը»: 1930-ական թթ. վերջերից հայ Մ-յան ասպարեզում կարևոր դեր սկսեց կատարել ՀՍՍՀ Ա. Մյասնիկյանի անվ. *հանրապետական գրադարանը*, որը հրատարակել է հայ դասական մի շարք գրողներին նվիրված Մ-ներ, ինչպես և հասարակական-քաղաքական, տեխ., երաժշտական որոշ հայ պարբերականների մատենագիտական ուղեցույցներ են: ՀՍՍՀ-ում մատենագիտական աշխատանք են կատարում նաև Խնկո Ապոր անվ. մանկական հանրապետական գրադարանը, *Երևանի համալսարանի գրադարանը*, Մեսրոպ Մաշտոցի անվ. *Մատենադարանը*, ՀՍՍՀ ԳԱ ինստ-ները և հիմնակազմ գրադարանը, մարքսիզմ-լենինիզմի ինստ-ը են: 1920-ից մատենագիտական աշխատանք է կատարվել նաև սփյուռքում (Հ. Ոսկյան, «Ցուցակ հայերեն ձեռագրաց Մխիթարյան մատենադարանին ի Վիեննայ», 1963, Ա. Սյուրմեյան, «Մայր ցուցակ հայերեն ձեռագրաց սրբոց Հակոբյանց վանքի», 1948, Ա. Սալմասլյան, «Հայկական մատենագիտություն», 1969 են), հրատարակվել են նաև մի շարք ձեռագրացուցակներ, հրատարակչական գրացուցակներ, անհատական Մ-ներ:

*Գրկ.* Անասյան Հ., Հայկական մատենագիտություն, հ. 1—2, Ե., 1959—76: Մատենագիտություն հայկական մատենագիտության, Ե., 1963: Իշխանյան Ռ., Հայ մատենագիտության պատմություն, պր. 1—3, Ե., 1964—68: Դավթյան Հ., Հայ գիրքը 1801—1850 թվականներին, Ե., 1967: Հայ գրականությունը օտար լեզուներով, Ե., 1971: Библиография. Общий курс под ред. М. А. Брискмана и А. Д. Эйхенгольца, М., 1969; Здобнов Н. В., История русской библиографии до начала XX века, М., 1955; Симон К. Р., История иностранной библиографии, М., 1963.

*Ռ. Իշխանյան*

**ՄԱՏԵՆԱԳԻՐ**, մատյան (գիրք) գրող: Հընում Մ. էին կոչվում և՛ գիրք գրողները, և՛ ընդօրինակողները, հետագայում՝ միայն գրողները: Այժմ Մ. ասելով հասկանում ենք անցյալի մեր հեղինակներին՝ Մովսես Խորենացի, Կորյուն, Դավիթ Անհաղթ, Անանիա Շիրակացի, Ստեփանոս Սյունեցի, Գրիգոր Նարեկացի, Մխիթար Գոշ, Վարդան Այգեկցի և ուրիշներ (տես նաև *Մատենագրություն*): *Ա. Մաթևոսյան*

**ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ**, այն ամենը, ինչ գրի է առնվել *մատյանի* մեջ, անկախ գրավոր խոսքի տեսակից (գեղարվեստական, ուսումնական, քարոզչական, գիտական են): Հայկ. տերմին, որն ընդհանուր առմամբ բովանդակությամբ համապատասխանում է *գրականություն* բառին: Հայ հին հեղինակները Մ. տերմինը գործածել են հիմնականում հայկ., քաղդեական, հուն., ասորական և այլ Մ-ների համար, իսկ հետագայում նկատի են ունեցել գլխավորապես հայ հին և միջնադարյան գրականությունը, հիմնականում ընդգրկելով մինչև XVIII դ. ստեղծված Մ-յան բոլոր տեսակները՝ պատմագրություն, աշխարհագրություն, փիլիսոփայություն, իրավունք, քերականություն, ուղեգրություն, բժշկություն, մաթեմատիկա, տիեզերագիտություն, տոմարագիտություն, ալքիմիա, գեղարվեստական գրականու-

թյուն և այլն: Մատենագրական հուշարձանների շարքն են դասվում նաև երկրների, քաղաքների, բույսերի, կենդանիների, թանկագին քարերի, չափ ու կշռի, պետական ու եկեղեցական գործիչների անուններ ու նրանց մասին տվյալներ պարունակող գրավոր նյութերը:

Հայտնի են համաքրիստոնեական Մ-յան բնագավառին պատկանող հետևյալ մատենագրական ժողովածուները, որոնք հայ Մ-յան մեջ թարգմանաբար թափանցել են հիմնականում հունականի միջոցով. Աստվածաշունչ (բիբլիա), սաղմոսարան (փսալտերիոն), պատարագամատույց (խորհրդատետր, լիտուրգիոն, միսսալե), ժամագիրք (հորոլոգիոն), մաշտոց (եվխոլոգիոն), ճաշոց (տոնամակ, տարեգիրք, պրոփետոլոգիոն, ապոստոլոս), հայսմավուրք (մենոլոգիոն, սինաքսարիոն), տոնացույց (տոնացուցակ, պարզատումար, հեմերոլոգիոն, կալենդարիում), ճառընտիր (տոնական, հոմիլիար, հոմիլիարում), Հարանց վարք (ակտասանկտորում), վկայաբանություն (ակտա մարտիրում), շարակնոց (շարական, էիրմոլոգիոն, ստիխերարիոն, հիմնարիում), գանձարան (կոնդակարիոն), մանրուսում (փսալտիկոն, ասմատիկոն), քարոզգիրք, կանոնագիրք, աղոթագիրք, տոնապատճառ և այլն: Բացի Աստվածաշնչից և սաղմոսարանից, մյուս ժողովածուներն ընդգրկում են նաև միջնադարյան Հայաստանում ստեղծված երկեր:

Միջնադարյան Մ-յան նմուշներից են խրատ, ներբող, օրհնություն, աղոթք, մաղթանք, կցուրդ, ողբ, կտակ, տնօրինական, տեսիլ, պարականոն պատմություններ, դավանաբանական գրագրություններ, նամակներ, վավերագրեր, «Բանք իմաստասիրաց» կոչվող հավաքածուներ և նմանատիպ այլ գրվածքներ պարունակող մատյանները:

Ձեռագիր և հնատիպ մատյաններում հանդիպում են նաև սնոտիապաշտական, գուշակողական, ախտարական գրվածքներ (աղավիտ, հավախոս, բախտացույց, վիճակացույց, երազահան, լուսնացույց, ռամգիրք), հմայական գրականություն (հմայիլ, ուրբաթագիրք), հրաշագործությունների պատմություններ, առասպելներ ևն: Հայ Մ., հատկապես պատմագրությունը, հայտնի է որպես աշխարհի ամենազարգացած գրականություններից մեկը: Նրա մի շարք նմուշներ (V դ. պատմիչ Ագաթանգեղոսի, VII դ. քաղկեդոնական անանուն մի ժամանակագրի, XIII—XIV դդ. Հեթում պատմիչի երկերը) դեռևս միջնադարում թարգմանվել են տարբեր լեզուներով և թափանցել այլ ժողովուրդների գրականության մեջ: Հայկ. շատ սկզբնաղբյուրներ հավասարապես ծառայում են որպես աղբյուր նաև հարևան ժողովուրդների (վրացիների, աղվանների, աբխազների, ալանների ևն) պատմության ուսումնասիրման համար: Համաշխարհային համբավ են վայելում թարգմանական Մ-յան այն երկերը (Եվսեբիոս Կեսարացի, Տիմոթեոս Կուզ, Անտիոքի Ասսիզներ ևն), որոնց հունարեն, ասորերեն և այլ հին լեզուներով գրված բնագրերը կորել են, և որոնք մեզ են հասել միայն հայերեն թարգմանությամբ:

*Գրկ.* Զ ա ր բ հ ա ն ա լ յ ա ն Գ., Մատենադարան հայկական թարգմանությանց նախնյաց, Վնտ., 1889: Նոր բառգիրք Հայկազեան լեզուի, հ. 1, Ե., 1979, էջ 9—20: Ա բ գ ա ր յ ա ն Գ., Մատենադարան, Ե., 1962:

*Գ. Աբգարյան*

**ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ**, ձեռագիր ու տպագիր մատյանների (գրքերի) պահպանումն ու հասարակական օգտագործումը կազմակերպող հիմնարկություն: Նույնը, ինչ՝ *գրադարանը*: Միջնադարյան Հայաստանի գրադարանները կոչվել են գրատուն, գրանոց, արկեղք գրոց, գանձատուն, նշխարանոց, դիվան, ջամբռ, նաև մատենադարան: Եղել են հիմնականում վանքերում, հաճախ ունեցել են հատուկ շինություններ, ասպատակություններից ապահով լինելու նպատակով տեղավորվել են նաև քարանձավներում: Մինչև տպագրությունը Մ-ներում պահվել են միայն ձեռագիր մատյաններ, ընդօրինակվել են ձեռագրեր: Միջնադարում Մ-ներ եղել են Էջմիածնում, Հաղպատում, Սանահինում, Սաղմոսավանքում, Տաթևում, Գեղարդում, Կեչառույքում, Գլաձորում, Բաղեշում, Գետիկում, Սիսում, Հռոմկլայում, Դրազարկում, Բարձրբերդում, Ակներում ևն: Ներկայումս Մ. անվանումը արևմտահայերենում շարունակում է նշանակել ընդհանրապես գրադարան: Հայտնի են Վենետիկի և Վիեննայի Մխիթարյան, Երուսաղեմի սրբոց Հակոբյանց Մ-ները: Արևելահայերենում վերջին 60 տարվա ընթացքում Մ-ի փոխարեն նույն իմաստով գործածվում է գրադարան: Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. *Մատենադարանը*, որը հիմնադրվել է V դ., ավանդաբար կոչվում է Մ. նաև Էջմիածնից Երևան տեղափոխվելուց հետո: Տես նաև *Ձեռագրատուն*, *Մատենաշար*:

*Գ. Աբգարյան, Ռ. Իշխանյան*

**ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ**, Հ ա յ կ ա կ ա ն Ս Ս Հ Մ ի ն ի ս տ ր ն ե ր ի խ ո ր հ ր դ ի ա ռ ը ն թ ե ր Մ ե ս ր ո պ Մ ա շ տ ո ց ի ա ն վ ա ն հ ի ն ձ ե ռ ա գ ր ե ր ի ի ն ս տ ի տ ո ւ տ, հիմնադրվել է 1959-ի մարտի 3-ին, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշմամբ, Պետական ձեռագրատան (Մատենադարան) հիմքի վրա: 1962-ից՝ Մեսրոպ Մաշտոցի անվան: Ունի մատենագրության և մանրանկարչության, հին մատենագրության, միջնադարյան մատենագրության և վավերագրերի, բնագիտական հուշարձանների և ձեռագրերի պահպանության, նաև արխիվային, ձեռագրերի վերականգնման ու պատճենահանման բաժիններ, հայագիտական գրադարան:

Մ-ի մասին առաջին տեղեկությունները մեզ են հասել V դարից: Ըստ Ղազար Փարպեցու, Էջմիածնի կաթողիկոսությանը կից գործել է մի գրատուն, որտեղ պահվել են հայերեն ու հուն. մատյաններ: Մինչև XV դ. Մ-ի մասին տեղեկություններ չեն պահպանվել: Կաթողիկոսական աթոռը Սսից Էջմիածին փոխադրվելուց հետո (1441) ծաղկում են ապրում Էջմիածնի գրատունն ու մերձակա վանքերի գրչակենտրոնները:

Միջնադարյան Հայաստանում խոշոր վանքերին ու մենաստաններին կից ձեռագրատներն ու գրչության կենտրոնները բազմիցս ավերվել են: Ստեփանոս Օրբելյանի վկայությամբ, 1170-ին *Բաղաբերդում* սելջուկ թուրքերը ավարի են մատնել շուրջ 10.000 հայերեն ձեռագիր, իսկ Առաքել Դավրիժեցին արձանագրում է Էջմիածնի գրատան թալանը XVII դ.: Վերջին անգամ Մ. ավերվել է 1804-ին, որի վկայությունն է Ներսես Աշտարակեցու՝ կոմս Ն. Պ. Ռումյանցևին ուղղած նամակը. «...ապաբախտ եմք... զի յաւուրս մեր բազմահարուստ գրատուն Արարատեան Աթոռոյ սրբոյ Կաթողիկէ Էջմիածնի... կողոպտեալ ի յաւար մատնեցաւ ...» (Ս ե դ ր ա կ յ ա ն Ա., Հովհաննես եպս. Շահխաթունեանցի կենսագրութիւնը, 1898, էջ 121—122):

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումից (1828) հետո նոր ժամանակաշրջան է սկսվում Մ-ի ձեռագրական հավաքածուների հարստացման համար. 1828-ին հաշվվում էր 1809 միավոր ձեռագիր, իսկ 1914-ին՝ 4660: XIX դ. վերջերից Էջմիածնի ձեռագրատանը հավաքված նյութերի օգտագործումով սկսված որոշ պատմաբանասիրական աշխատանքներ ընդհատվեցին 1914—18-ի առաջին համաշխարհային պատերազմի պատճառով: Մեծ եղեռնի տարիներին ոչնչացվեցին հայ մշակույթի բազմաթիվ կենտրոններ, հազարավոր ձեռագիր մատյաններ:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը Ռուսաստանում և սովետական կարգերի հաստատումը Հայաստանում կործանումից փրկեցին հայ ժողովրդին ու նրա դարավոր մշակույթը: 1920-ի դեկտ. 17-ին, ՀՍՍՀ Հեղկոմի դեկրետով, պետականացվեց նաև Էջմիածնի Մ., իսկ 1921-ի փետր. 5-ի դեկրետով Մ-ի հիմքի վրա ստեղծվեց Կուլտուր-պատմական ինստիտուտը՝ առաջին գիտ. հաստատությունը Հայաստանում: Ա. Մյասնիկյանի 1922-ի մարտի 6-ի կարգադրությամբ Էջմիածին են վերադարձվում պատերազմի տարիներին պահպանության համար Մոսկվա փոխադրված հայերեն ձեռագրերը: 1939-ին, Հայաստանի կառավարության որոշմամբ, Մ. Էջմիածնից տեղափոխվում է Երևան և տեղավորվում Ա. Մյասնիկյանի անվ. պետ. հանրային գրադարանի նորակառույց շենքում: 1959-ին փոխադրվում է նոր շենք:

Էջմիածնի ձեռագրատան պատասխանատուներ են եղել Ներսես Սարկավագը (1662), Իսահակ Սարկավագը (1766), Գրիգոր Վարդազարյանցը (1819), Մանվել Գյումուշխանեցին (1828—30), այնուհետև՝ Հովհաննես Շահխաթունյանցը, Մակար Հովբյանցը, Դանիել Շահնազարյանցը, Գրիգոր Մուշեղյանը, Ներսես Խուդավերդյանը, Սահակ Ամատունին, Գարեգին Հովսեփյանը, Մխիթար Վարդապետը (պաշտոնակատար), Մեսրոպ Տեր-Մովսիսյանը, Հուսիկ Մովսիսյանը, Գևորգ Չորեքչյանը:

Սովետական իշխանության տարիներին Մ-ի տնօրեններ են եղել Ս. Տեր-Հակոբյանը, Կ. Ղազարյանը, Մ. Հասրաթյանը, Հ. Մանվելյանը, Ե. Թորոսյանը, Գ. Աբովը, Վ. Նալբանդյանը: 1954-ից տնօրենն է ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Լ. *Խաչիկյանը*:

Մ-ի, որպես գիտահետազոտական ինստ-ի, խնդիրներն են. ա. հին ձեռագրերի պահպանությունը, վերականգնումը ու

պատճենահանումը, բ. ձեռագիր հուշարձանների հավաքումը, գ. հայերեն ձեռագրերի մայր ցուցակի կազմումը, դ. կարևորագույն բնագրերի, ինչպես նաև հայկ. մանրանկարչության հուշարձանների ուսումնասիրությունն ու հրապարակումը, ե. համաշխարհային նշանակություն ունեցող միջնադարյան հայկ. աղբյուրները ռուս. և եվրոպական լեզուներով հրատարակելը, զ. գիտահանրամատչելի գրքույկների միջոցով հայ ժողովրդի ձեռագրական մշակույթի արժեքավոր կոթողների մասսայականացումը:

Սովետական կարգերի առաջին տասնամյակներում Մ-ի հիմնական հավաքածուն համալրվում է Վասպուրականից և Տարոնից բերված, Սովետական Միության տարածքում գտնվող հայկ. վանքերից ու եկեղեցիներից հավաքված, Մոսկվայի Լազարյան ճեմարանից, Թիֆլիսի հայոց ազգագրական ընկերությունից ու Ներսիսյան դպրոցից, Նոր Նախիջևանից, Նոր Բայազետից, Կարինի Ներսեսյան դպրոցից, Թավրիզի առաջնորդարանից, Դարաշամբից (մինչև 1946-ը՝ գյուղ Իրանի Մակու գավառում), Երևանի պետ. թանգարանից և այլ վայրերից ստացված, ինչպես նաև զանազան անհատների նվիրած կամ վաճառած ձեռագրերով, որոնք ցուցակագրվում ու նկարագրվում են, կազմվում են տարբեր բնագավառների (պատմագիտություն, գեղարվեստական գրականություն, փիլիսոփայություն, բժշկագիտություն ևն) ժամանակագրական ցանկեր, ուղեցույցներ, օժանդակ քարտարաններ: Ավելի ուշ՝ 1965—70-ին հրապարակվում է Մ-ի ձեռագրերի համառոտ ցուցակը՝ 2 հատորով: 1959-ից մինչև այսօր լույս է ընծայվել ավելի քան 100 անուն գիրք:

Մ-ի ծրագրերում ուրույն տեղ են տրվում «Պատմագիրք Հայոց» մատենաշարի գծով տարվող աշխատանքներին. լույս են տեսել Եղիշեի, Սեբեոսի, Արիստակես Լաստիվերտցու, Կիրակոս Գանձակեցու պատմությունների գիտա-քննական բնագրերը: Պատմական կարևոր սկզբնաղբյուր են հանդիսանում նաև հայկ. ձեռագրերի հիշատակարանները, որոնք հրատարակվում են ըստ դարերի: Հայաստանի և հարևան երկրների, ինչպես նաև հայկ. գաղթավայրերի պատմության ուսումնասիրության համար եզակի արժեք են ներկայացնում Մ-ի դիվանում պահվող բազմահազար փաստաթղթերը: Հրատարակվել են պարսկ. հրովարտակների, կալվածագրերի մի քանի ժողովածուներ, Կամենեց-Պոդոլսկի հայկ. դատարանի արձանագրությունները, որոնք արժեքավոր տեղեկություններ են պարունակում լեհահայ գաղութի պատմության ուսումնասիրման համար:

Առաջընթաց է կատարվել հայ փիլիսոփայական հուշարձանների ուսումնասիրման և հրապարակման գործում: Դրանցից շատերն ունեցել են նաև զուգահեռ ռուս. թարգմանություն (Դավիթ Անհաղթ, Վահրամ Րաբունի, Անանուն Մեկնիչ): Ուշադրության կենտրոնում են միջնադարյան հայ իրավունքի եզակի հուշարձանները. հրապարակված են Մխիթար Գոշի «Դատաստանագրքի» և «*Աստրախանի հայոց դատաստանագրքի*» քննական բնագրերը: Միջնադարյան գեղարվեստական գրականության բնագրերից տպագրվել են Գրիգոր Տղայի, Հովհաննես Երզնկացու, Պաղտասար Դպիրի, Նաղաշ Հովնաթանի և այլ տաղերգուների ժառանգությունները, Խիկար Իմաստունի խրատները: Ուսումնասիրվում են նաև միջնադարյան հայկ. բնագիտական հուշարձանները. հրապարակի վրա են Անանիա Շիրակացու, Մխիթար Հերացու, Գրիգորիսի, Աբու Սաիդի երկերը:

Միջնադարյան հայ տնտ. մտքի ուսումնասիրության համար սկզբնաղբյուրային նշանակություն ունեն XVI—XVIII դդ. ստեղծված առևտրական ձեռնարկներն ու հաշվեմատյանները: Այս հուշարձանները ծրագրված է հրատարակել «Տնտեսական պատմության վավերագրեր» նոր մատենաշարով: Զգալի աշխատանք է տարվում մանրանկարչական հուշարձանները հետազոտելու և հրատարակելու համար: Լույս են տեսել «Հայկական մանրանկարչություն» (1967), «Արհեստներն ու կենցաղը հայկական մանրանկարներում» (1973), Վասպուրականի մանրանկարչություն և այլ ալբոմներ: Մ-ի գրապահոցներում պահվում է հայ երաժշտական արվեստի հարուստ ժառանգություն. ջանքեր են գործադրվում լուծելու *խազերի* թնջուկը: Ուրույն տեղ է հատկացված հայկ. կարևորագույն ձեռագրական հուշարձանների ռուս. թարգմանությանը, որոնց զգալի մասը տպագրվում է Մոսկվայում՝ ՍՍՀՄ ԳԱ «Արևելքի մատենագրության հուշարձաններ» մատենաշարով (Կորյուն, Դավիթ Անհաղթ, Անանիա Շիրակացի, Արիստակես Լաստիվերտցի, Առաքել Դավրիժեցի): Հայ մատենագիրների երկերի և հնատիպ հրատարակությունների եզակի նմուշները հանրային սեփականություն դարձնելու նպատակով հրապարակված են Դավիթ Անհաղթի «Սահմանք իմաստասիրութեան» 1280-ի ձեռագրի, ինչպես նաև «Ուրբաթագրքի», «Տաղարանի» և «*Ազդարարի*» նմանահանությունները: 1941-ից հրատարակվում է «*Բանբեր Մատենադարանի*» աշխատությունների ժողովածուն:

Մ. սերտ կապերի մեջ է ձեռագրական մշակույթի խնդիրներով զբաղվող սովետական և արտասահմանյան գիտական ու թանգարանային հաստատությունների հետ, կատարում է գրքերի ու մանրաժապավենների փոխանակում:

Մատենադարանը այսօր դարձել է նաև տեսարժան վայր. ամեն տարի հազարավոր հայ և օտարազգի հյուրեր այցելում են Մ. և ծանոթանում հայ ժողովրդի հոգևոր մշակույթի եզակի նմուշներին:

Մ-ի հեղինակության աճը մեծապես նպաստում է նաև ձեռագրերի հավաքչական աշխատանքներին. Սովետական Միության տարբեր վայրերում և արտասահմանյան երկրներում ապրող հայերը նվիրում են իրենց մոտ պահվող հայ ձեռագրական մշակույթի մասունքները, իսկ երբեմն՝ նաև օտարալեզու գրչագրեր (Հ. Հազարյանը՝ Նյու Յորքից, նվիրել է 397, Վ. Սալաթյանը՝ Դամասկոսից՝ 150, Ռ. Մարկոսյանը՝ Փարիզից՝ 37 ձեռագիր, իսկ մեկ կամ երկու ձեռագիր նվիրողների անունները հարյուրների են հասնում):

Մ-ում հավաքված է աշխարհում առկա ավելի քան 25.000 հայերեն ձեռագրերի մոտ կեսը: Դրանք V—XVIII դդ. հայ պատմիչների, փիլիսոփաների, աստվածաբանների, բանաստեղծների, մաթեմատիկոսների, բժիշկների երկերն են, ինչպես նաև հին աշխարհի և միջնադարի հույն, ասորի և այլազգի հեղինակների ստեղծագործությունների թարգմանությունները, այդ թվում նաև միայն հայերեն թարգմանությամբ պահպանված մի շարք կարևոր հուշարձաններ: Մ-ի ձեռագրերի ընդհանուր թիվը առ 1981-ի հունվարը 16.089 միավոր էր, որից 13.623-ը՝ հայերեն, իսկ 2.466-ը՝ օտար լեզուներով: *Բ. Չուգասզյան*

Մ-ի շենքը (նախագծվել և կառուցվել է 1945—57-ին, ճարտ. Մ. Գրիգորյան) ունի քաղաքաշինական կարևոր դիրք. տեղադրված է Երևանի կենտրոնի հս-ում բարձրացող սարահարթի լանջին, Լենինի պողոտայի առանցքով և եզրափակում է նրա հեռանկարը: Կառուցված է բազալտ քարից, ներսում օգտագործված են տարբեր մարմարներ:

Շենքում կան անհրաժեշտ սարքավորումներով գրապահոցներ, աշխատասենյակներ, սրահներ, դահլիճներ ևն: Մ-ի նշանակությունը պայմանավորել է շենքի ճարտարապետությունը: Այն արտաքուստ լուծված է հայ ճարտ-յանը բնորոշ ձևերի մշակումով, իսկ ներքին տարածություններում մեծ չափով կիրառված են հայ միջնադարյան ճարտ. ձևերն ու լուծումները: Մ-ում կիրառված արվեստների սինթեզը բացահայտում և որոշակի է դարձնում ճարտարապետության բովանդակությունը: Գլխավոր ճակատի խորշերի միջասյուներին առջև հայ միջնադարյան գրականության, արվեստի, գիտության մեծ գործիչների՝ Մովսես Խորենացու (քանդակագործ՝ Ե. Վարդանյան, 1965), Թորոս Ռոսլինի (քանդակագործ՝ Ա. Շահինյան, 1967), Գրիգոր Տաթևացու (քանդակագործ՝ Ա. Գրիգորյան, 1967), Անանիա Շիրակացու (քանդակագործ՝ Գ. Բաղալյան, 1963), Մխիթար Գոշի (քանդակագործ՝ Ղ. Չուբարյան, 1967), Ֆրիկի (քանդակագործ՝ Ս. Նազարյան, 1967) բազալտե արձաններն են, իսկ դրանցից ցած՝ փոքրիկ հրապարակում՝ Մեսրոպ Մաշտոցի արձանախումբը (քանդակագործ՝ Ղ. Չուբարյան, 1962-ին՝ գիպսից, 1967-ին՝ բազալտից): Բակի աջ և ձախ կողմերի կամարակապ սրահներում ցուցադրված են հայ ճարտարապետության հուշարձանների մանրամասներ, խաչքարեր: Շենքի նախասրահում «Ավարայրի ճակատամարտը» խճանկարն է (1956—60), իսկ գլխավոր աստիճանատան պատերին՝ «Հայոց պատմություն» եռամաս որմնանկարը (1956—59, երկուսն էլ՝ նկարիչ Հ. Խաչատրյան): Մ. 1978-ից ընդարձակվում է. հս. լեռան մեջ կառուցվում են գրապահոցներ, որոնք թունելով կմիանան հիմնական շենքին: *Լ. Զորյան*

Պատկերազարդումը տես 368—369-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակ III:

*Գրկ.* Մայր ցուցակ ձեռագիր մատենից գրադարանի սրբոյ աթոռոյն Էջմիածնի, Թ., 1863: Խաչիկյան Լ., Մատենադարանը անցյալում և սովետական իշխանության տարիներին, «ԲՄ», հ. 4, 1958: Նույնի, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր գիտա-հետազոտական ինստիտուտ «Մա-

տենադարանը», «ՊԲՀ», 1959, № 2—3: Աբգարյան Գ., Մատենադարան, Ե., 1962: Եգանյան Օ., Մատենադարանի ձեռագրական հավաքածուները, տես «Ցուցակ ձեռագրաց Մաշտոցի անվան Մատենադարանի», հ. 1, Ե., 1965, էջ 13—214:

**ՄԱՏԵՆԱՆԻՇ**, գրանիշ, իգրոց, էքսլիբրիս, փոքր չափի գծանկար, որն արտահայտում է գրադարանի պատկանելությունը, բովանդակությունը, գրքի տիրոջ մասնագիտությունը, նախասիրությունները: Բազմացվում և փակցվում է գրքի կազմին, ներսի կողմից: Ամենահին Մ-երը նկարվել են ֆրանս. ձեռագրերի վրա: Տպագիրները ստեղծվել են Գերմանիայում, առաջինը՝ 1460-ին, գերմանացի ասպետ Բեռնարդ ֆոն Ռոդբախի զինանշանի պատկերով: Սկզբնական շրջանում տարածված էին զինանշանային Մ-երը, հետագայում՝ սյուժետայինները: Շուտով Արևմտյան Եվրոպան և ապա ամբողջ աշխարհը որդեգրեցին այդ կուլտուրան: Դրան մեծապես նպաստեց այն, որ Մ-եր սկսեցին ստեղծել հռչակավոր նկարիչներ Ա. Դյուրերը, Լ. Կրանախը, Հ. Հոլբայն Կրտսերը և ուրիշներ, ինչպես և՝ Մ-երի հավաքածու կազմելը:

Բովանդակությամբ Մ-երը բաժանվում են չորս տեսակի՝ թեմատիկ-սյուժետային, զինանշանային, անվանագրային և տպատառային, ըստ պատրաստման միջոցների՝ նկարված, տպագրված և դաջված: Պատրաստման տեխնիկան բազմազան է՝ փորագրություն, ասեղնագծում, օֆորտ, վիմագրություն, լուսապատճենում ևն:

Մատենանիշեր. *1.* Հ. Հասսոն-Ագոպսովիչ. նկարչի անձնական մատենանիշը (Լեհաստան), *2.* Վ. Սուրենյանց. Ա. Շմիդտի մատենանիշը (1909), *3.* Մ. Բաղդասարյան. Վ. Անանյանի մատենանիշը (1962), *4.* Ռ. Բեդրոսով. Պ. Սալմաշիի մատենանիշը (1965)

Հայկ. հին ձեռագրերը հիմք են տալիս մտածելու, որ Հայաստանում Մ. գոյություն է ունեցել դեռևս միջնադարում: Հին մատյաններն ունեն հիշատակարաններ, որտեղ գրիչները նշում են, թե ում է պատկանում ձեռագիրը, և առատորեն սփռված են գլխազարդերն ու վերջնազարդերը, սկզբնատառերի նկարազարդումները, թռչնագրերը, այսինքն՝ առկա են Մ-ի երկու էական տարրերը՝ պատկանելություն ցույց տալն ու պատկերը, որոնք և վկայում են միջնադարյան Հայաստանում Մ-ի հավանական կիրառության մասին: Սակայն առայժմ հայտնի հայկ. առաջին Մ. ստեղծել է Վ. *Սուրենյանցը* Ֆ. Բուլղակովի համար, XIX դ. վերջերին: Այդ ավանդույթը շարունակել են Մ. Սարյանն ու Հ. Կոջոյանը: Սովետահայ մատենանիշային արվեստի հիմնադիրներից մեկը և անխոնջ պրոպագանդիստը եղել է Ռ. *Բեդրոսովը*: Այդ արվեստի զարգացման գործում իրենց լուման ունեն նաև Ա. Մամաջանյանը, Պ. Կուզանյանը, Ցա. Ագոպսովիչը (Հովհաննես Հակոբյան, Լեհաստան), Մ. Բաղդասարյանը, Ա. Զաքարյանը, Ռ. Մնացականյանը և ուրիշներ: Հայկ. Մ-եր ստեղծվել են նաև Ռուսաստանում, Իտալիայում, Ֆրանսիայում, ԱՄՆ-ում, Լեհաստանում և այլուր:

*Գրկ.* Բեդրոսյան Ռ., Մատենանիշեր, Ե., 1978: *Ս. Ղազարյան*

**ՄԱՏԵՆԱՇԱՐ**, որևէ հատկանիշով (թեմատիկ, ժանրային ևն) ու նպատակադրըմամբ խմբավորվող և ձևավորմամբ ընդհանրացող գրքերի շարք: Մ. լինում է լույս տեսնող գրքերի (հատորների) սահմանափակ կամ անսահմանափակ քանակությամբ: Անցյալում լույս տեսած և այժմ շարունակվող հայտնի Մ-երից են՝ «Համաշխարհային գրականության գրադարան», «Փիլիսոփայական ժառանգություն», «Անտիկ գրականության գրադարան», «Նշանավոր մարդկանց կյանքը», «Ընտիր մատենագիրք», «Մատենագրութիւնք նախնեաց», *«Ղուկասյան մատենադարան»*, «Էժանագին գրադարան», «Դպրոցական գրադարան», «Արկածային գրադարան», «Գրական հուշարձաններ», «Սփյուռքահայ գրողներ», «Հայ մատենագիրներ», «Հայ դասականների գրադարան», «Ռուս դասականների գրադարան» ևն:

**ՄԱՏԵՆՃՅԱՆ** Մամբրե Վարդանի (25.10.1880, Բաբերդ —2.3.1920, Թիֆլիս), հայ գրականագետ, մանկավարժ: 1886-ին նրանց ընտանիքը տեղափոխվել է Կովկաս: 1901-ին Մ. ավարտել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանը: 1903—07-ին սովորել է Սորբոնի համալսարանի գրականության բաժնում (հաճախել է նաև արվեստների պատմության դասընթացները): Այնուհետև մինչև կյանքի վերջը ֆրանսերեն, հայոց լեզու, հայ և ընդհանուր գրականություն է դասավանդել Թիֆլիսի Ներսիսյան դպրոցում (դպրոցի համար գրել և հրատարակել է «Հունական գրականություն» ձեռնարկը): Արտաշես և Մանուկ Աբեղյանների հետ կազմել է 1912—17-ին պրակներով լույս տեսած «Գրագետ» ուղղագրության դասագիրքը: Մ. աշխատակցել է ժամանակի հայ պարբերական մամուլին, մասնակցել գրական կյանքին:

*Գրկ.* Հայ մշակույթի օրրանը, Ե., 1971, էջ 200—211: *Հ. Դավթյան*

**ՄԱՏԵՐԻԱ** (լատ. materia — նյութ), գիտակցությունից անկախ և նրանից դուրս գոյություն ունեցող ռեալությունը: Փիլիսոփայության պատմության մեջ Մ-ի գաղափարի ըմբռնումը կապված է եղել աշխարհի բազմազան իրերի ու երևույթների համար մեկ ընդհանուր միասնական հիմք՝ *սուբստանց* նշելու պրոբլեմի հետ:

Հին աշխարհի (Հնդկաստան, Չինաստան, Եգիպտոս ևն) փիլիսոփայության մեջ Մ-ի գաղափարը ըմբռնվել է մտահայեցողական ձևով՝ որպես նախանյութ, որից «կերտված» են աշխարհի բոլոր առարկաները: Այդ պատճառով, օրինակ, Հին Հունաստանում, Մ. պարզունակորեն նույնացվել է ջրի (Թալես), օդի (Անաքսիմենես) հետ, դիտվել է որպես վերացական տրամաբանական նախասկիզբ՝ *ապեյրոն* (Անաքսիմանդրոս), որպես կրակ (Հերակլիտ), որն իր մեջ սինթեզում է նախանյութը և շարժման ու փոփոխման կենսական ուժը: Այս երկու միտումները Դեմոկրիտը ներկայացնում է մեկ ընդհանուր մտահայեցողական նախասկզբի՝ ատոմի մեջ, իսկ Մ.՝ երկու ձևով՝ ատոմ և դատարկություն:

Նոր ժամանակից սկսած, փորձարարական գիտության զարգացմանը զուգընթաց, Մ-ի գաղափարի հիմքը դառնում է բնագիտությունը: Փորձեր էին արվում նախանյութի փոխարեն գտնել անփոփոխ առաջնային հատկություններ, որոնք ընդհանուր լինեն աշխարհի բոլոր առարկաների համար և ընկած լինեն նրանց հիմքում: Որպես այդպիսիք հանդես էին գալիս երկրաչափական ու մեխանիկական հատկանիշներ՝ տարածականություն, անթափանցիկություն, ծանրություն, ձև, տեղափոխություն ևն, որոնք սովորաբար ամփոփվում էին իրենց մեկ միասնական կրողի՝ ֆիզիկական ատոմի մեջ: Մ. ըմբռնվում էր նրա ֆիզիկական հատկանիշների տեսանկյունից և սահմանվում էր առանց գիտակցության հետ հարաբերակցությանը դիմելու: Ֆրանս. մատերիալիստները (Դ. Դիդրո, Պ. Հոլբախ) առաջինը նկատեցին, որ անհնարին է առարկաների բոլոր հատկանիշները հանգեցնել միայն մեխանիկականի և բոլոր ձևերը՝ միայն երկրաչափականի, և փորձեցին Մ-ի սահմանման համար նշել փիլիսոփայական-իմացաբանական հիմքեր՝ ներկայացնելով այն գիտակցության հետ ունեցած իր հականդրության մեջ: Այս միտումը իր հետագա զարգացումն ստացավ մարքսիստական փիլիսոփայության մեջ, որը Մ-ի սահմանումը ուղղակիորեն կապեց *փիլիսոփայության հիմնական հարցի* մատերիալիստական լուծման հետ. Մ. դիտվեց որպես գիտակցությունից անկախ գոյություն ունեցող ռեալություն: Մ-ի այդ դիալեկտիկամատերիալիստական ըմբռնումը հենվում է աշխարհի մատերիական միասնության, գիտակցության նկատմամբ Մ-ի առաջնայնության և աշխարհի ճանաչելիության սկզբունքների վրա: Սրանով Մ-ի որպես փիլ. կատեգորիայի ըմբռնումը սահմանազատվում է Մ-ի դրսևորման կոնկրետ բնագիտական պատկերացումներից և այն խարսխվում համընդհանուր հատկությունների վրա (օբյեկտիվություն, շարժում ու զարգացում, անստեղծելիություն ու անոչնչանալիություն, տարածաժամանակային անվերջ գոյություն,

կառուցվածքայնության անսպառելիություն են): Ընդհանրացնելով բնագիտության նորագույն նվաճումները և մարքսիստական փիլիսոփայության դրույթները՝ Լենինը ձևակերպեց Մ-ի սահմանումը. «Մատերիան փիլիսոփայական կատեգորիա է՝ նշանակելու համար օբյեկտիվ ռեալությունը, որ տրված է մարդուն նրա զգայությունների մեջ, ... գոյություն ունենալով նրանցից անկախ» (Երկ., հ. 14, էջ 161):

Մ-ի գաղափարը նրա դրսևորման կոնկրետ ձևերի ֆիզիկական հատկանիշների հետ նույնացնելու փաստով էր պայմանավորված այն ճգնաժամային վիճակը, որը ստեղծվեց ֆիզիկայում XX դ. սկզբին՝ կապված ատոմի տրոհման և ռադիոակտիվության հայտնագործման հետ: Այս փաստերը շատ մտածողների հանգեցրին այն եզրակացությանը, որ Մ. չքանում է, մնում է միայն շարժումը: Այս միտումը հանգեցրեց, մասնավորապես, էներգետիզմի (Օստվալդ), որը փորձում էր աշխարհի հիմքում դնել զուտ էներգիան՝ առանց նրա մատերիական կրողի: Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ դա արդյունք է Մ-ի մետաֆիզիկական պատկերացման, երբ Մ. ըմբռնվում է որպես որոշակի ֆիզիկական վիճակ, և առաջ քաշեց Մ-ի կառուցվածքայնության անվերջության գաղափարը, որն ամենևին էլ նույնական չէ նյութի անվերջ բաժանելիության մեխանիկական ըմբռնմանը: Ներկայումս հայտնի է Մ-ի դրսևորման երկու հիմնական ձև՝ *նյութ* և *դաշտ*: Այդ ձևերը միմյանց հետ փոխկապված են և ամենևին էլ վերջնական չեն:

*Գրկ.* Էնգելս Ֆ., Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը, Ե., 1972: Նույնի, Անտի-Դյուրինգ, Ե., 1967: Լենին Վ. Ի., Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, Երկ., հ. 14: Архипцев Ф. Т., Материя как философская категория, М., 1961; Диалектика в науках о неживой природе, М., 1964, разд. 2; Философские проблемы физики элементарных частиц, М., 1963; Мелюхин С. Т., Материя в ее единстве, бесконечности и развитии, М., 1966; Նույնի, Материальное единство мира в свете современной науки, М., 1967; Структура и формы материи, М., 1967; Кедров Б. М., Ленин и революция в естествознании XX века, М., 1969; Исследования по общей теории систем, М., 1969; Ленин и современное естествознание, М., 1969; Марков М. А., О природе материи, М., 1976.

*Ս. Ավետիսյան*

**ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄ** (լատ. materialis — նյութական), փիլիսոփայական ուղղություն, որը *փիլիսոփայության հիմնական հարցը* լուծելիս, ի հակադրություն *իդեալիզմի*, առաջնային է համարում *կեցությունը*, բնությունը՝ դրանից ածանցելով *մտածողությունը*, *գիտակցությունը*, ոգին: Մ-ի հիմնական հասկացությունը *մատերիան* է, այսինքն՝ աշխարհը (բնությունը), վերցված որպես օբյեկտիվ իրականություն, որը գոյություն ունի և կառավարվում է իրեն ներհատուկ օրենքներով և իր բացատրության համար կարիք չունի իրենից դուրս կամ վեր կանգնած որևէ ուժի, էության, կարգի, ինչպես այդ պնդում է փիլ. իդեալիզմը: Մ-ի իմացաբանությունը արտացոլման տեսությունն է, ըստ որի զգայությունները օբյեկտիվ աշխարհի սուբյեկտիվ պատկերն են: Մ-ի առաջին պատմական ձևը անտիկ Մ. է: Աշխարհը դեռ բաժանված չէր մասնավոր գիտությունների հետազոտության բնագավառների, չկար բուն իմաստով փորձարարական նյութ, ուստի անտիկ Մ. հայեցողական էր. նա աշխարհը դիտում էր որպես ամբողջություն՝ սեփական կյանքով ապրող յուրովի մի օրգանիզմ՝ ներդաշնակորեն կառուցված, օրինաչափ տիեզերք՝ «կոսմոս», և գտնում էր, որ կա ինքնուրույն մատերիական նախասկիզբ, որն ընկած է աշխարհի բազմազանության հիմքում (միլեթյան դպրոցի «սկզբնամատերիան» և «արխեն», Անաքսագորասի «հոմեոմերիաները», Էմպեդոկլեսի «չորս տարրերը» են): Աշխարհի վերջնական տարրերի վերաբերյալ պատկերացումների զարգացումը եղավ ատոմիզմի ուսմունքը (Լևկիպոս, Դեմոկրիտ, Էպիկուր): Միջնադարում իշխող կրոնա-իդեալիստական փիլիսոփայության շրջանակներում ընդհանուր առմամբ մատերիալիստական միտում ուներ միայն նոմինալիզմի պնդումը վերացական ընդհանրական էությունների նկատմամբ առանձին, եզակի առարկաների առաջնայնության մասին (տես *Նոմինալիզմ* և *ռեալիզմ*): Բնության ինքնաբավ գոյության և ինքն իրենով բացատրելի լինելու մատերիալիստական գաղափարն այստեղ դրսևորվում էր «աստծու և բնության համատեղության» և «երկակի ճշմարտության» տեսությունների ձևով: Այս հանգամանքները խիստ ուշագրավ են հայ միջնադարյան փիլիսոփայության գնահատման համար, որի մեջ մեծ զարգացում էր ստացել հետևողական նոմինալիզմը (Հովհաննես Սարկավագ, Վահրամ Րաբունի, Գրիգոր Տաթևացի, Հովհանն Որոտնեցի): Մ-ի հաջորդ պատմական ձևը, որն սկզբնավորել է Ֆ. *Բեկոնը*, կապված է բուրժ. արտադրահարաբերությունների կազմավորման և փորձնական բնագիտության զարգացման հետ: Նոր ժամանակի Մ. բացառում էր փորձնական դրսևորում չունեցող ամեն տեսակ վերացական մետաֆիզիկական էությունները և աշխարհի հիմքում դնում էր մատերիան նյութական մասնիկների, մարմնական սուբստանցի ձևերով: Բնագիտության և փիլիսոփայության դասականների համար (Թ. Հոբս, Ջ. Լոկ, Պ. Գասենդի, Գ. Գալիլեյ, Ի. Նյուտոն, Պ. Լապլաս են) աշխարհը (բնությունը) ներկայանում էր որպես մի հսկայական մեխանիզմ, որը կառավարվում է մեխանիկայի օրենքներով և նկարագրելի է մաթեմատիկական բանաձևերի լեզվով: Գիտական բացատրության եղանակով դա, ուրեմն, մեխանիստական Մ. էր (տես *Մեխանիցիզմ*): Փորձնական բնագիտությանը հատուկ վերլուծական մեթոդը և մեխանիստական մտածելակերպը, փոխադրվելով փիլիսոփայության մեջ, կազմեցին նաև ժամանակի Մ-ի բնորոշ սահմանափակությունը՝ նրա մետաֆիզիկական բնույթը (հակադիալեկտիկայի իմաստով): Մետաֆիզիկական Մ. իշխում էր ընդհուպ մինչև XIX դ. կեսերը: Եվ միայն առանձին մատերիալիստներ (Բ. Սպինոզա, Դ. Դիդրո) կռահում էին մեխանիկա-մետաֆիզիկական մտածելակերպի սահմանափակությունները: Այս Մ-ի համար բնորոշ էր նաև ձգտումը՝ մարդուն դնելու բնության ընդհանուր կարգի մեջ և մարդու մասին գիտությունը ստեղծելու բնագիտության տիպարով: Սակայն նա անկարող գտնվեց տալու մարդկային հասարակության հետևողական մատերիալիստական բացատրությունը: XVIII դ. ֆրանս. Մ. (Ժ. Լամետրի, Կ. Հելվեցիուս, Դ. Դիդրո, Պ. Հոլբախ) հատկապես զարգացրել սենսուալիստական արտացոլման տեսությունը, հետևողականորեն դրսևորեց Մ-ի կապն աթեիզմի հետ: Մ-ի այս ձևի բարձրակետը եղավ Լ. *Ֆոյերբախի* ուսմունքը, որը ցույց տվեց իդեալիզմի անխուսափելի կապը կրոնի հետ: Հատուկ տեղ ունի ռուս հեղափոխական դեմոկրատների ուսմունքը, որի մեջ Մ. զուգակցված է սոցիալական հեղափոխության դիալեկտիկական գաղափարի հետ: XIX դ. աշխարհի վերաբերյալ բնագիտական հայացքի հաղթանակի շնորհիվ ակնհայտ դարձավ Մ-ի ներքին կապը բնագիտության հետ: Մ. գերիշխում էր բնագետների շրջանում (այսպես կոչված, բնապատմական կամ բնագիտական Մ.): Պատահական չէ, որ երբեմն մատերիալիստորեն մեկնաբանվում էր նաև պոզիտիվիզմը, որքանով որ այն հռչակում էր աշխարհի գիտական ճանաչողության իդեալը: Բուն Մ-ի մեջ ևս նկատվում էր փիլիսոփայությունը բնագիտության արդյունքների հանրամատչելի վերաշարադրմամբ փոխարինելու միտումը («գռեհիկ» Մ.):

XIX դ. մի շարք հայ մտածողների (Խ. Աբովյան, Ս. Պալասանյան, Ս. Ոսկանյան, Ա. Գարագաշյան, Գ. Կոստանդյան) հայացքներում Մ-ի աղբյուրը, մի կողմից, անմիջականորեն եվրոպական միտքն էր՝ XVIII դ. ֆրանս. Մ., XIX դ. բնապատմական Մ., ինչպես և մատերիալիստորեն մեկնաբանված պոզիտիվիզմը, իսկ մյուս կողմից՝ ռուս հեղափոխական դեմոկրատների Մ., որի անմիջական ազդեցությամբ ձևավորվեցին Մ. Նալբանդյանի և հայ առաջադեմ մտավորականության հայացքները:

Մ-ի հաջորդ պատմական ձևը *դիալեկտիկական մատերիալիզմն* է՝ առավել հետևողական մատերիալիստական փիլիսոփայությունը, որը համապատասխանում է հասարակական կյանքի և գիտական ճանաչողության զարգացման որակական նոր աստիճանին: Այն հաղթահարեց մինչմարքսիստական Մ-ի սահմանափակությունները և առաջին անգամ տվեց պատմության մատերիալիստական ըմբռնումը (տես *Պատմական մատերիալիզմ*): Մ-ի արտացոլման տեսության դիալեկտիկական վերակառուցումը հնարավորություն ընձեռեց լուծելու գիտության առաջադիմության ընթացքում ծագող իմացաբանական դժվարությունները, որոնց հանդեպ անզոր էր մետաֆիզիկական-մեխանիստական Մ-ի հայեցողական իմացաբանությունը:

*Գրկ.* տես *Դիալեկտիկական մատերիալիզմ*, *Պատմական մատերիալիզմ*, մատերիալիստ փիլիսոփաների վերաբերող հոդվածների գրականությունը:

*Հ. Գևորգյան*

**«ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄ ԵՎ ԷՄՊԻՐԻՈԿՐԻՏԻՑԻԶՄ»**: Քննադատական նոթեր մի ռեակցիոն փիլիսոփայության մասին», Վ. Ի. Լենինի գլխավոր փիլիսոփայական երկը: Գրվել է 1905—07-ի հեղափոխության պարտությունից հետո, ռեակցիայի տարիներին, հրատարակվել 1909-ի մայիսին: «Մ. և է.» ստեղծվել է մարքսիզմի փիլիսոփայությունը ռևիզիոնիզմի հարձակումներից պաշտպանելու, *էմպիրիոկրիտիցիզմի* (տես նաև *Մախիզմ*) և զանազան այլ փիլ. ուսմունքների (*նեոկանտականություն*, *պրագմատիզմ*, *իմմանենտ փիլիսոփայություն* ևն) կրոնաիդեալիստական բնույթը բացահայտելու, կուսակցության առջև ծառացած արմատական փիլ. հարցերը լուծելու նպատակով: Այդ երկում Լենինը մշակել է մարքսիստական կուսակցության փիլ., տեսական հիմքերը: Լենինը, զարգացնելով մատերիալիզմի դրույթները, տվեց *մատերիայի* դասական սահմանումը (Երկ., հ. 14, էջ 161), որը իդեալիզմի դեմ պայքարի ողջ պատմության ու բնագիտական նվաճումների ընդհանրացումն եղավ: «Մ. և է.» երկում հետագա զարգացում ստացավ *փիլիսոփայության հիմնական հարցը*: Լենինը, ընդգծելով մատերիայի առաջնայնությունը, ցույց տվեց, որ կեցության ու մտածողության հակադրությունը սահմանափակվում է «հիմնական իմացաբանական հարցի» շրջանակներով, որ այդ սահմաններից դուրս «... տվյալ հակադրության հարաբերականությունն անտարակուսելի է» (նույն տեղում, էջ 186): «Մ. և է.» երկում որակական նոր աստիճանի բարձրացվեց մարքսիստական *իմացաբանությունը*: Նա փիլիսոփայության ոլորտը մուծեց արտացոլման հասկացությունը, ընդգծելով, որ մատերիայի հիմքում ընկած է «զգայության նման հատկություն, արտացոլման հատկություն» (նույն տեղում, էջ 109), նշելով հոգեկանի, գիտակցության երկրորդայնությունը, ընդգծեց, որ մտածողությունը, գիտակցությունը իրականության արտացոլումն է: Լենինը, ստեղծագործորեն կիրառելով դիալեկտիկան, զարգացրեց ճշմարտության մասին մարքսիստական ուսմունքը: Նշելով գիտության և պրակտիկայի անխզելի կապը՝ նա ցույց տվեց պրակտիկայի դերը գիտելիքի օբյեկտիվությունը որոշելու հարցում:

Լենինն ուշադրությունը բևեռեց նաև փիլիսոփայության և գիտության փոխհարաբերության հարցին: Հետազոտելով XIX—XX դդ. սահմանագծի բնագիտության մեջ, հատկապես ֆիզիկայում, տեղի ունեցած հեղաշրջումը, նշեց նախկին մատերիալիզմի սահմանափակությունները, դիալեկտիկական մատերիալիզմի մեթոդաբանական նշանակությունը նորագույն հայտնագործությունների մեկնաբանման հարցում: Բնութագրելով ֆիզիկայի ճգնաժամի էությունը՝ Լենինը բացահայտեց *ֆիզիկական իդեալիզմի* և *ֆիզիոլոգիական իդեալիզմի* դասակարգային ու իմացաբանական արմատները, բնագիտության զարգացման բարդ, դիալեկտիկական ուղին: Լենինը ցույց տվեց, որ մարքսիզմը հետևում է փիլ. լավագույն ավանդույթներին, կատեգորիաների ներքին զարգացման տրամաբանությանը և պահպանում ու ամրապնդում է կապը զարգացող գիտության հետ՝ օգտագործելով նրա փորձը իր կատեգորիաները նոր բովանդակությամբ հարստացնելու և զարգացնելու համար: Այդ պատճառով է, որ դիալեկտիկական մատերիալիզմը պահպանում է արդի գիտության զարգացման միտումներին համապատասխանող մեթոդաբանական նշանակությունը:

«Մ. և է.» երկում Լենինը համակողմանիորեն քննարկեց մատերիայի ու նրա շարժման ձևերի բազմազանության հարցը, տարածության և ժամանակի կատեգորիաները, պատճառականության սկզբունքը ևն: Լենինը հարստացրեց *կուսակցականության* սկզբունքը, մատնանշեց, որ փիլիսոփայությունը հակամարտ հասարակության մեջ դրսևորվում է մատերիալիզմի ու իդեալիզմի պայքարում: Լենինը, բացահայտելով հասարակական երևույթների մախիստական բացատրությունների սնանկությունը, հասարակության վերաբերյալ կենսաբանական և էներգետիկական ուսմունքների հետադիմական բնույթը՝ զարգացրեց պատմական մատերիալիզմը: Մախիստները այդ ուսմունքներով փորձում էին սքողել կապիտալիզմի խոցերը, դասակարգային հակամարտության էությունը: Լենինը միաժամանակ ցույց տվեց, որ մարքսիզմը մարտնչող ուսմունք է հասարակության հեղափոխական վերափոխման մասին և արտահայտում է պրոլետարիատի ու աշխատավոր զանգվածների արմատական շահերը: «Մ. և է.» երկը կոմունիստական ու բանվորական կուսակցությունների մարտական զենքն է բուրժ. գաղափարախոսության դեմ մղվող պայքարում: Այն ստեղծագործական մարքսիզմի վառ օրինակ է, որը նոր մակարդակի բարձրացրեց մարքսիզմի փիլիսոփայությունը և այսօր էլ շարունակում է ծառայել մարքսիստական գիտական աշխարհայացքի ձևավորմանը:

Լենինի «Մ. և է.» երկը հայերեն առաջին անգամ առանձին գրքով հրատարակվել է 1939-ին: Առ 1-ը հունվարի 1981 հրատարակվել է ևս 5 անգամ:

*Գրկ.* Иовчук М. Т., Ленинизм, философские традиции и современность, М., 1970; Кедров Б. М., Как изучать книгу В. И. Ленина «Материализм и эмпириокритицизм», М., 1972.

**ՄԱՏԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱ**, տես *Դիալեկտիկա*, *Դիալեկտիկական մատերիալիզմ*:

**ՄԱՏԹԵՈՍ Ա ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍԵՑԻ**, Չուխաճյան (1802, Կ. Պոլիս —22.8. 1865, Էջմիածին), Հայոց կաթողիկոս 1858-ից: 1835-ին ընտրվել է Բուրսայի թեմի, 1841-ին՝ Զմյուռնիայի թեմի առաջնորդ, 1844—48-ին եղել Կ. Պոլսի հայոց պատրիարք: Նպաստել է Կ. Պոլսի և Զմյուռնիայի հայ գաղթավայրերի կրթական և գրական կյանքի աշխուժացմանը: 1845-ին վերաբացել է Կ. Պոլսի Սկյուտարի ճեմարանը: Ունեցել է ռուս. կողմնորոշում: Պայքարել է հայերի մեջ բողոքականության տարածման դեմ: Ընտրվելով Հայոց կաթողիկոս՝ փորձել է վերանայել 1836-ի «*Պոլոժենիե*»-ն: 1861-ին հաստատել է Թիֆլիսի Ներսիսյան դպրոցի, ապա՝ թեմական դպրոցների կանոնադրությունները, նպաստել կրթության աշխարհականացմանը: Օժանդակել է Էջմիածնի ձեռագրերի ցուցակագրմանը: Գրել է հայոց եկեղեցու ինքնուրույնությունը պաշտպանող կրոնա-եկեղեցական աշխատություններ:

*Գ. Սարգսյան*

**ՄԱՏԹԵՈՍ Բ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍԵՑԻ**, Իզմիրլյան (1845, Կ. Պոլիս —1910, Էջմիածին), Հայոց կաթողիկոս 1908-ից: 1869-ին նշանակվել է Մկրտիչ Խրիմյանի անձնական քարտուղար, 1872-ին ընտրվել Կ. Պոլսի կրոնական ժողովի անդամ և ատենապետ, 1886 —90-ին եղել Եգիպտոսի հայ թեմի առաջնորդ: 1894—96-ին և 1908-ին՝ Կ. Պոլսի հայոց պատրիարք: Պայքարել է Արևմտյան Հայաստանում քաղ. բարենորոգումներ անցկացնելու համար, բողոքել 1894—96-ի հայկ. ջարդերի դեմ: 1896-ին աքսորվել է Երուսաղեմ (ազատվել է երիտթուրքերի հեղաշրջումից հետո՝ 1908-ին): Ընտրվելով կաթողիկոս Էջմիածին է ժամանել 1909-ի հուլիսին՝ գահակալելով ընդամենը մեկ տարի: Գրել է Էջմիածնի ընդհանրական իրավունքները պաշտպանող կրոնական աշխատություններ:

*Գ. Սարգսյան*

**ՄԱՏԹԵՈՍ ԾԱՐԵՑԻ** (1590-ական թթ., Արցախի Ծար գավառ —1661, Ամստերդամ), Ամստերդամի հայկական տպագրության հիմնադիր, սարկավագ, Փիլիպոս Աղբակեցի կաթողիկոսի նոտարը (Էջմիածին): Հակոբ Ջուղայեցին ընտրվելով կաթողիկոս (1655)՝ Զմյուռնիայում գտնվող Մ. Ծ-ուն հանձնարարում է մեկնել Իտալիա՝ տպարան հիմնելու և հայերեն գրքեր տպագրելու համար: Իտալիայում իշխող կաթոլիկական գրաքննության պատճառով հաջողության չհասնելով՝ Մ. Ծ. մեկնում է Հոլանդիա և 1658-ին էլզեվիրների նշանավոր տպագրատան գրաձուլիչ, գերմանացի վարպետ Քրիստոֆել ֆոն Դիկին (հոլանդերեն՝ Վան Դեյկ) պատվիրում է հայերեն տպատառեր՝ ըստ Մովսես Տաթևացի կաթողիկոսից ստացած տառանմուշների: Ստանալով նորաձույլ տպատառերի մի մասը՝ 1660-ին իր սարքավորած տպարանում Մ. Ծ., որպես փորձ, սկսում է տպագրել Ներսես Շնորհալու «Յիսուս որդի»-ն: Նյութական դժվարությունների պատճառով տպարանը ընկնում է փակվելու վտանգի տակ, բայց օգնության է հասնում Ամստերդամում գտնվող նորջուղայեցի վաճառական Ավետիս Ղլիճենցը (*Ոսկան Երևանցու* եղբայրը), պայմանով, որ տպարանը կոչվի Ս. Էջմիածնի և Ս. Սարգսի անվ.: «Յիսուս որդու» տպագրությունը չավարտած՝ Մ. Ծ. վախճանվում է: Գրքի տպագրությունը շարունակում է Ա. Ղլիճենցը և ավարտում 1661-ի մայիսին՝ վերջում դնելով Մ. Ծ-ու և իր հիշատակարանները: Աստվածաշնչի տպագրությունը (1666—68) իրագործում է Ամստերդամի հայկ. տպարանի տնօրեն դարձած Ոսկան Երևանցին:

*Գրկ.* Ներսես Շնորհալի, Յիսուս որդի, Ամստերդամ, 1660—1661, Հիշատակարան: Սարուխան Ա., Հոլանդան և հայերը ԺԶ—ԺԹ դարերում, Վնն., 1926: Լևոնյան Գ., Հայ գիրքը և տպագրական արվեստը, Ե., 1958: Իշխանյան Ռ., Հայ գրքի պատմություն, հ. 1, Ե., 1977, էջ 408—419:

*Ռ. Իշխանյան*

**ՄԱՏԹԵՈՍ ՋՈՒՂԱՅԵՑԻ** (ծն. և մահ. թթ. անհտ.), XIV դարի վերջի և XV դարի սկզբի հայ մեկնիչ, մանկավարժ և գրիչ: Ծնունդով Հին Ջուղայից: Բարձրագույն կրթություն է ստացել Տաթևի համալսարանում՝ աշակերտելով Հովհան Որոտնեցուն և Գրիգոր Տաթևացուն: Շրջագայել է Հայաստանում և Փոքր Ասիայում, եղել Կոստանդնուպոլսում ևն: Տիրապետել է մի քանի լեզուների, այդ թվում՝ արաբերենին: Գործել է Ապրակունիսի Ս. Կարապետ վանքում (Երնջակ), ապա՝ Տանձափարախ անապատում (Տաթևի մոտ), իսկ 1395-ից՝ Տաթևի համալսարանում, որպես դասախոս: Ստեղծագործելով շուրջ 3—4 տասնամյակ (1380—1410-ական թթ.)՝ Մ. Ջ. թողել է գրական հարուստ ժառանգություն՝ գանձեր ու տաղեր (Գրիգոր Ծերենցի պատվերով), բազմաթիվ մեկնություններ, մոտ 50 քարոզ, Գրիգոր Տաթևացու թաղմանը (1410-ի հունվար) արտասանած դամբանականը ևն: Որոշ երկեր պահպանվել են իր իսկ ինքնագրով: Գաղափարական պայքար է մղել ունիթոռական շարժման դեմ՝ հայ եկեղեցու ազգային-դավանական անկախության համար: Նրա ստեղծագործություններն ունեն պատմաճանաչողական արժեք, հարուստ տեղեկություններ են պարունակում Լենկթեմուրի և կարա-կոյունլուների շրջանի Հայաստանի ներքին կյանքի, քաղ. վիճակի, սոցիալ-տնտեսական հարաբերությունների, դասային կառուցվածքի, քաղաքային ու գյուղական համայնքների, կենցաղի, զբաղմունքների, հարկատեսակների, արհեստավորական և գյուղատնտ. աշխատանքների, միջնադարյան թատրոնի, ժամանակի բնական գիտությունների ևնի վերաբերյալ: Պահպանվել են Մ. Ջ-ու օրինակած մի քանի արժեքավոր գրչագրեր:

*Գրկ.* Խաչիկյան Լ., Մատթեոս Ջուղայեցու կյանքն ու մատենագրությունը, «ԲՄ», 1956, № 3: *Պ. Խաչատրյան*

**ՄԱՏԹԵՈՍ ՎԱՆԱՆԴԵՑԻ** Հովհաննիսյան (ծն. մոտ 1630—40-ական թթ.— մահ. թ. անհտ.), XVII դարի 2-րդ կեսի և XVIII դարի 1-ին քառորդի մշակութային գործիչ, տպագրիչ, Ամստերդամի հայկ. երկրորդ տպագրության սկզբնավորող, վարդապետ: Ծնվել է Հայաստանի Գողթն գավառի (այժմ՝ Նախիջևանի ԻՍՍՀ) Վանանդ գյուղում: Գողթնի Ս. Խաչ վանքի եպիսկոպոս, մշակութային-լուսավորական գործիչ Թովմաս Վանանդեցի Նուրիջանյանը իր քեռորդուն՝ Մ. Վ-ուն տարել է Եվրոպա և 1670-ին (Լիվոռնոյում) հանձնել Ոսկան Երևանցու տնօրինությանը: Մ. Վ. տպագրական գործ սովորելով, որպես գրաշար, Մարսելում 14 տարի անվճար աշխատել է Ս. Էջմիածնի և Ս. Սարգսի անվ. տպարանում՝ մասնակցելով մոտ 20 անուն հայերեն գրքերի հրատարակությանը: 1683-ին, երբ Մարսելում հայկ. տպարանը փակվելու վտանգի տակ էր, Թովմաս Վանանդեցու հանձնարարությամբ գնում է Ամստերդամ, հայկ. տպատառեր պատվիրում հունգարացի ականավոր գրաձուլիչ վարպետ Նիկոլաս Քիշին, սարքավորում տպարան և 1685-ին հրատարակում Շարակնոց, 1686-ին՝ Ժամագիրք: Շուտով նրան են միանում իր ազգականներ *Ղուկաս Վանանդեցին* (1690-ին) և Միքայել Վանանդեցին (1696-ին): 1694-ին Թովմաս Վանանդեցին գալով Ամստերդամ՝ ստանձնել է տպարանի տնօրինությունը: Մ. Վ. տպարանում աշխատել է մինչև 1704-ը՝ տպագրելով մոտ 15 անուն գիրք (կամ մասնակցելով դրանց տպագրությանը), այդ թվում՝ Մովսես Խորենացու «Պատմութիւն Հայոց»-ը (1-ին հրտ., 1695), հայերեն առաջին քարտեզը՝ «Համատարած աշխարհացոյց»-ը (1695), Ղուկաս Վանանդեցու աշխատությունները՝ «Բանալի համատարածի աշխարհացոյցին մերոյ նորածնի» (1696), «Համաձայնութիւն հնգետեսակ ամսոց...» (1698), «Գանձ չափոյ, կշռոյ...» (1699, աշխարհաբար) ևն: Ղուկաս Վանանդեցու հեղինակությամբ գրել է «Ոսկեայ դուռն դպրատան» դասագիրքը (1699), «Բնաբանութիւն իմաստասիրական կամ տարեբաբանութիւն...» երկը (1702), նրա հետ կազմել բնագիտական, աստղագիտական, պատմագիտական ու լեզվաբանական այլ երկեր (տես Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարան, ձեռ. №№ 2180, 5024, 6620, 6679, 8120): Շարադրել է աստղագիտական-հողաչափական գործիքի (աստրոլաբ) օգտագործման կանոնները:

*Գրկ.* Սարուխան Ա., Հոլլանդան և հայերը ԺԶ—ԺԹ դարերում, Վնն., 1926: Գրիգորյան Մ., Նոր նյութեր և դիտողություններ հրատարակիչ Վանանդեցվոց մասին, Վնն., 1969: Թումանյան Բ., Հայ աստղագիտության պատմություն, հ. 1, Ե., 1964: Իշխանյան Ռ., Հայ գրքի պատմություն, հ. 1, Ե., 1977: *Ռ. Իշխանյան, Բ. Թումանյան*

**ՄԱՏԹԵՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ** (XI դ. 2-րդ կես— մոտ 1144), հայ ժամանակագիր: Ծնվել և ապրել է Ուռհա (Եդեսիա) քաղաքում, եղել վանական: Հավանաբար զոհվել է Ուռհա քաղաքի վրա Հալեպի Զանգի ամիրայի զորքերի գրոհի ժամանակ: Ենթադրվում է, որ «Ժամանակագրություն»-ը գրել սկսել է 1113-ին և շարունակել մինչև կյանքի վերջին օրերը: Այն բաղկացած է 3 մասից: Առաջինը (ընդգրկում է 952—1051-ի իրադարձությունները) շարադրված է գրավոր աղբյուրների, հիմնականում՝ *Հակոբ Սանահնեցու* «Ժամանակագրության» հիման վրա: Երկրորդ մասի (1052—1101-ի իրադարձությունները) համար Մ. Ու. որպես աղբյուր օգտագործել է նաև ականատեսների պատմածները (մասամբ ինքն է ականատես): Այն ավարտել է 1128-ին: Երրորդ մասը (1102—1137-ի իրադարձությունները), որը շարադրել է տասնամյա ընդմիջումից հետո, ամենաարժեքավորն է, որովհետև Մ. Ու. նկարագրել է իր ժամանակը: «Ժամանակագրություն»-ում պատմվում է Բագրատունիների թագավորության, նրա կործանման, սելջուկյան թուրքերի արշավանքների և նվաճումների, հայերի արտագաղթի, երկրից դուրս հայկ. իշխանությունների հիմնադրման և օտարերկրյա նվաճողների դեմ նրանց պայքարի մասին: Մանրամասն տեղեկություններ կան նաև հարևան ժողովուրդների և օտարերկրյա նվաճողների, նրանց (Վրաստան, Արաբական խալիֆայություն, Բյուզանդիա, սելջուկյան թուրքեր և թուրք. իշխանություններ, խաչակիրներ և խաչակրաց իշխանություններ) հետ հայերի փոխհարաբերությունների մասին: «Ժամանակագրություն»-ը իրադարձությունների սոսկ արձանագրում չէ. Մ. Ու. վերլուծում է, դատապարտում Բյուզանդիայի հայակործան քաղաքականությունը, զայրույթով գրում սելջուկյան թուրքերի և խաչակիրների գործած ավերածությունների մասին: Հայկ. պետականության անկումը, արտաքին գործոններից բացի, Մ. Ու. բացատրում է նաև հայ իշխանազունների և կրոն. գործիչների անկարողությամբ, նրանց դատապարտում անօրինականության, ազգային ավանդույթներից շեղվելու, բարոյական անկման մեջ: Մ. Ու-ու երկը կարևոր աղբյուր է նաև բյուզանդագիտության, արաբագիտության, թուրքագիտության, Արևելքի խաչակրաց իշխանությունների պատմությամբ զբաղվող մասնագետների համար: Մ. Ու-ու «Ժամանակագրություն»-ը շարունակել է *Գրիգոր Երեցը*, իր «Տարեգրքում» օգտագործել *Սմբատ Սպարապետը*: Առաջին անգամ, «Պատմութիւն» վերնագրով, հրատարակվել է 1869-ին, Երուսաղեմում (լիակատարը՝ 1898-ին), Է. *Դյուլորիեի* ֆրանս. թարգմանությամբ՝ 1858-ին, Փարիզում: Հրատարակվել է նաև թուրք. (1962):

*Երկ.* Ժամանակագրություն, Ե., 1973:

*Գրկ.* Ալիշան Ղ., Հայապատում, Վնտ., 1901: Աճառյան Հ., Մատթեոս Ուռհայեցի, «ՀԱ», 1953, էջ 350—54: Աբեղյան Մ., Երկ., հ. 4, Ե., 1970: Խաչիկյան Լ., Հակոբ Սանահնեցի՝ ժամանակագիր XI դարի, «ԲԵՀ», 1971, № 1: *Հ. Բարթիկյան*

**ՄԱՏԻԵՆՆԵՐ** (հուն. Ματιηνοί), հնագույն ցեղ կամ ցեղային միավորում Կապադովկիայում, Հալիս գետի աջ հովտում: Մ. թ. ա. VI—V դդ. Մ. իրենց հս-արլ. հարևան ցեղերի՝ ալարոդիների ու սասպիրների (սպերացիներ) հետ միասին կազմել են Աքեմենյան աշխարհակալության 18-րդ սատրապությունը: Որոշ ուսումնասիրողներ Մ-ին շփոթել են Կապուտան (Ուրմիա) լճից հվ.՝ Փոքր Զավ գետի վերին հոսանքի շրջանում գտնվող Մարաստանի «Մատիենե» կոչվող գավառի հետ: Մ. թ. ա. VI—V դդ. պատմիչներ Հեկատեոս Միլետացին և Հերոդոտոսը վկայում են, որ Մ. տարազով, զինվածությամբ և էթնիկական այլ հատկանիշներով մերձավոր են եղել փոքրասիական հարևան ցեղերին՝ Կապադովկիայի ասորիներին, պափլագոնացիներին, մոսքերին ու կոլքերին: Հետևաբար Մ-ին անկարելի է նույնացնել նույն Հերոդոտոսի հիշատակած Մատիենե գավառին, որը նա վերագրում է բուն Մարաստանին:

*Գրկ.* Կառվալյան Մ Ա., Աքեմենյան աշխարհակալության 13-րդ և 18-րդ սատրապությունները, «ԼՀԳ», 1976, № 7:

**ՄԱՏԻՆՅԱՆ** Լևոն Արշալույսի (ծն. 11.9. 1923, Թիֆլիս), հայ սովետական նյարդաֆիզիոլոգ: Կենսբ. գիտ. դ-ր (1971): ՍՄԿԿ անդամ 1947-ից: 1946-ին ավարտել է Թբիլիսիի բժշկ. ինստ-ը: 1947-ից աշխատում է ՀՍՍՀ ԳԱ Լ. Օրբելու անվ. ֆիզիոլոգիայի ինստ-ում, 1971-ից՝ նյարդա-էնդոկրին փոխհարաբերության լաբորատորիայի վարիչ: Գիտական հետազոտությունները վերաբերում են նյարդաբանության, նյարդերի և ներզատիչ գեղձերի փոխհարաբերության, երիկամների գործունեության նյարդա-հումորալ կարգավորման, կենտ-

րոնական նյարդային համակարգության հետ մակերիկամների և ենթաստամոքսային գեղձի փոխհարաբերության, արյունաստեղծման համեմատական-ֆիզիոլոգիական առանձնահատկությունների հարցերին: Նյարդային վնասվածքների ֆերմենտային բուժման նրա մշակած մեթոդը ՍՍՀՄ-ում կիրառվում է նյարդաբուժության մեջ: Մ. ԱՄՆ-ի պարապլեգիական ընկերության պատվավոր գիտական խորհրդատու է (1976), զլխուղեղի ուսումնասիրության միջազգային կազմակերպության անդամ (1979):

*Երկ*. Ферментотерапия при органических повреждениях спинного мозга, Е., 1973 (համահեղինակից՝ Андреасян С. А.); Сравнительно-физиологические особенности компенсаторных приспособлений при повреждениях спинного мозга, Е., 1978.

**ՄԱՏԻՆՅԱՆ** Սերգեյ Հայկի (ծն. 8.1.1931, Թիֆլիս), հայ սովետական ֆիզիկոս: Ֆիզմաթ գիտ. դ-ր (1966), պրոֆեսոր (1969): ՍՄԿԿ անդամ 1953-ից: Ավարտել է Թբիլիսիի համալսարանը (1954): Երևանի ֆիզիկայի ինստ-ի դիրեկտորի տեղակալն է գիտական աշխատանքի գծով (1970-ից) և տարրական մասնիկների տեսության լաբորատորիայի վարիչը (1968-ից): Աշխատանքները վերաբերում են թույլ, էլեկտրամագնիսական և ուժեղ փոխազդեցությունների, տարրական մասնիկների տեսությանը, դաշտի քվանտային տեսությանը, բարձր էներգիայի միջուկային ֆիզիկային, քվանտային հիդրոդինամիկային (գերհոսունության տեսություն) և նեյտրինային աստղաֆիզիկայի հարցերին: Կարևոր արդյունքներ է ստացել չեզոք K-մեզոնների օպտիկայի, վեկտորական մեզոնների ֆոտոծնման բնագավառներում:

**ՄԱՏԻՍ** (Matiss) Անրի Էմիլ Բենուա (1869—1954), ֆրանսիացի նկարիչ, քանդակագործ: Սովորել է Փարիզի Ժյուլիան ակադեմիայում (1891-ից), Դեկորատիվ արվեստների դպրոցում (1893-ից), Գեղեցիկ արվեստների դպրոցում (1895—99-ին, Գ. Մորոյի մոտ): Կրել է *նեոիմպրեսիոնիզմի*, Պ. *Գոգենի*, արաբ. Արևելքի արվեստի և հին ռուս. սրբանկարչության (1911-ին այցելել է Մոսկվա) ազդեցությունը: 1905—1907-ին եղել է *ֆովիզմի* պարագլուխ: 1900-ական թթ. 2-րդ կեսից հաստատել է գեղարվեստական արտահայտչականության մի նոր եղանակ՝ կիրառելով լակոնիկ, խիստ և միաժամանակ ճկուն գծանկար, սուր ռիթմավորված կոմպոզիցիա, երբեմն՝ ինտենսիվորեն վառ ու լոկալ (Ս. Ի. Շչուկինի մենատան համար արված «Պար» և «Երաժշտություն» պաննոները, երկուսն էլ՝ 1910, Էրմիտաժ, Լենինգրադ), երբեմն նրբերանգներով հարուստ մեկ հիմնական տոնի («Նկարչի արվեստանոցը», 1911, Ա. Ս. Պուշկինի անվ. կերպարվեստի թանգարան, Մոսկվա) ոչ շատ գունահատվածների հակադիր զուգորդումներ: Մ-ի 1910-ական թթ. 2-րդ կեսի զուսպ ու խստաշունչ ստեղծագործություններում նկատելի է *կուբիզմի* ազդեցությունը («Երաժշտության դաս», 1916—17, Ժամանակակից արվեստի թանգարան, Նյու Յորք): 1920-ական թթ. աշխատանքներն աչքի են ընկնում մոտիվների կենսական



Ա. Մատիս. Ինքնանկար (Գեղարվեստական պետական թանգարան, Կոպենհագեն)

անմիջականությամբ, գունային բազմազանությամբ ու մեղմությամբ («Հարճեր» շարքը): 1930—40-ական թթ. Մ. հանրագումարի է բերել նախորդ ստեղծագործական նվաճումները՝ ֆովիզմի շրջանի ազատ դեկորատիվության որոնումները համադրելով կոմպոզիցիայի ճշգրիտ վերլուծված կառուցվածքին (Բեռնեսի թանգարանի «Պար» ֆրիզը, 1931—32, Մերիոն, Ֆիլադելֆիա նահանգ, ԱՄՆ), նրբերանգված գունաշարին («Սալորենու ճյուղ», 1948, մասնավոր հավաքածու, Նյու Յորք): Ամբողջության մեջ Մ-ի արվեստին բնորոշ են մի շարք ընդհանրություններ: Զգտելով XX դ. բուռն կյանքի լարվածությանը հակադրել հավերժական արժեքներ՝ վերաստեղծել է այդ իրականության տոնական կողմը՝ անվերջանալի պարի, հովվերգական հանգստի, զարդապատ զոդգերի ու գործվածքների, փայլատակող պտուղների, սկահակների, բրոնզյա անոթների ու արձանիկների աշխարհը: Մ-ի նպատակամիտումն էր դիտողին ներգրավել իդեալական կերպարների և անուրջների այդ ոլորտը, նրան հաղորդել խաղաղման կամ անորոշ, բայց դյութիչ տագնապի զգացում: Մ-ի գեղանկարչությունը ներազդում է գունապատկերի ծայրահեղ հագեցածությամբ, գծային ռիթմերի երաժշտականությամբ, մաքուր գունահարաբերումներով («Կարմիր ձկներ», 1911, Ա. Ս. Պուշկինի անվ. կերպարվեստի թանգարան): Մ. աշխատել է նաև գրաֆիկայի («Թեմաներ և վարիացիաներ», ածուխ, գրիչ, 1941, Ռոնսարի «Սիրո բանաստեղծություններ» գրքի նկարազարդում, վիմագրություն, 1948), գունավոր թղթերով ապլիկացիայի («Ջազ», նկարաշար, 1944—47), քանդակագործության («Մերկ կնոջ մարմին՝ մեջքի կողմից», բրոնզ, 1930, Գեղարվեստական թանգարան, Ցյուրիխ), վիտրաժի (Նիցցային մոտիկ՝ Վանսի կապելլայի ինտերիեր, 1953) մարզերում: Չնայած նկարիչը չի դիմել ժամանակակից կյանքի կոնկրետ իրադարձություններին, անմիջականորեն չի արձագանքել դարաշրջանի հասարակական ցնցումներին՝ նրա լավատեսական արվեստը կարևոր տեղ է գրավում XX դ. հումանիստական արժեքների շարքում: Մ. ֆրանս. մտավորականության առաջավոր ներկայացուցիչներից էր, խաղաղության պաշտպանության ակտիվ մարտիկ, համակրանքով էր վերաբերվում ՍՍՀՄ-ին: Մոսկվայի և Լենինգրադի թանգարաններում է գտնվում նկարչի ստեղծագործության լավագույն հավաքածուներից մեկը:

Պատկերազարդումը տես 289-րդ էջից առաջ՝ ներդիրում:

*Գրկ*. Алпатов М. В., Матисс, М., 1969; Матисс. Живопись. Скульптура. Графика. Письма (каталог произведений в музеях СССР), Л., 1969.

**ՄԱՏԻՏ**, ածխի, կապարի, գրաֆիտի, չոր ներկի ձողիկ (հաճախ՝ փայտե կամ մետաղե պատյանի մեջ), որ գործածում են գրելու, նկարելու կամ գծագրելու համար: Մ-ի նախատիպը կապարե կամ արծաթե բութակն էր՝ մետաղե սեղմակի մեջ (կիրառվել է XII—XVI դդ.): XIV դ. տարածում է ստացել, այսպես կոչված, իտալ. Մ. (կավային սև հերձաքարից), որից ստացվում է սև փայլատ գունաբիծ, XVI դարից՝ գրաֆիտե Մ. (որի գունաբիծը սակավ ինտենսիվ է, ունի որոշակի փայլ) և վառված ոսկորի փոշուց ու բուսական սոսնձից պատրաստված Մ. (ստացվում է ուժեղ սև փայլատ գունաբիծ): 1790-ին ֆրանսիացի գիտնական Ն. Կոնտեն ստեղծել է փայտե Մ., միաժամանակ չեխ Յո. Հարտմուտը առաջարկել է գրելու ձողիկները պատրաստել մանրացված գրաֆիտի և կավի խառնուրդից (այս մեթոդը Մ. պատրաստելու ժամանակակից տեխնոլոգիայի հիմքն է): XIX դ. 2-րդ կեսին երևան են եկել, իսկ XX դ. մեծ տարածում գտել մեխանիկական կամ ավտոմատ Մ-ները: Ըստ գրելու հատկության և արտադրման տեխնոլոգիայի Մ-ները լինում են՝ դպրոցական, գրասենյակային, ճծագրական, նկարչական, ստաղձագործական, դիմահարդարման ևն: Հատուկ տեսակներ են *սանգինան* և *կավճաներկը*:

**ՄԱՏՂԱՇՆԵՐԻ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, գյուղատնտեսական կենդանիների մատղաշների նորածնության, կաթնային կերակրման և կրծից անջատելու ժամանակաշրջանում առաջացող հիվանդություններ: Ստորաբաժանվում են վարակիչի և ոչ վարակիչի: Ոչ վարակիչ հիվանդությունները բաժանվում են 3 խմբի՝ մարսողական համակարգի հիվանդություններ (դիսպեպսիաներ, գաստրոէնտերիտներ, հորթերի պարբերական փքանք, բեզոարներ, խոճկորների թունավոր հեպատոդիստրոֆիա ևն), շնչառական օրգանների հիվանդություններ (բրոնխոպնևմոնիաներ, թոքերի, բրոնխների, թոքամզի բորբոքումներ ևն), ոչ լիարժեք կերակրման հետևանքով առաջացած հիվանդություններ (հիպովիտամինոզներ, նյութափոխանակության խանգարումներ, խոճկորների ալիմենտար անեմիա (սնընդային սակավարյունություն), մատղաշների սպիտակամկանային հիվանդություն, էնզոոտիկ ատաքսիա, խոճկորների պարակերատոզ ևն):

Հատկապես մեծ կորուստներ են պատճառում դիսպեպսիաները և բրոնխոպնևմոնիաները:

Դիսպեպսիան նորածինների (հորթեր, խոճկորներ, գառներ, մտրուկներ) սուր ընթացող հիվանդություն է: Արտահայտվում է մարսողության ֆունկցիոնալ խանգարմամբ, օրգանիզմի նյութափոխանակության խախտմամբ, ջրազրկմամբ և ինտոքսիկացիայով: Պատճառը հիմնականում հղիության շրջանում մայրերի ոչ լիարժեք կերակրումն է: Հիվանդությանը նպաստում է նաև առաջին ծծելու համար խիժի ուշացած տալը, սառած

կամ կեղտոտ խիծով կերակրելը: Ախտանշանները. լուծ, արագ հյուծում՝ մարմնի բնական ջերմության դեպքում: Ըստ ընթացքի լինում է հասարակ ու թունավոր: Բուժումը. անտիբիոտիկներ, սուլֆանիլամիդային պատրաստուկներ: Օգտակար են նաև ստամոքսա-աղիքային ուղիների մաքրումը՝ լուծողական և մաքրող հոգնաները: Կանխարգելումը. սանգոռհիգիենային նորմերի պահպանում, կովերի լիարժեք կերակրում, մատղաշի ժամանակին կերակրում լավորակ խիծով, մոր կրծի մաքրություն:

Բրոնխոպնևմոնիաներով հիվանդանում են բոլոր մատղաշները (հորթերը՝ հիմնականում 30—45, խոճկորները՝ 30—60 օրականում, գառները՝ 3—6 ամսականում): Պատճառներն են՝ մատղաշների աճեցման անասնաբուժական-սանիտարական կանոնների խախտումը, օրգանիզմի գերսառեցումը կամ գերտաքացումը, մայրերի և մատղաշների ոչ լիարժեք կերակրումը, օրգանիզմի ընդհանուր դիմադրողականության անկումը: Ընթացքը՝ սուր, ենթասուր և քրոնիկական: Ախտանշաններն են. հազ, փռշտոց, քթից լորձի կայուն հոսք: Հիվանդության 3—5-րդ օրը մարմնի ջերմության բարձրացում, ընդհանուր ընկճվածություն, ախորժակի բացակայություն, շնչառության և պուլսի արագացում, հնոց: Ախտորոշման ժամանակ պետք է տարբերել միկրոբրոնխիտից, թոքերի կրուպոզ բորբոքումից, առանձնապես վարակիչ ծագման հատուկ հիվանդություններից (դիպլոկոկոզ, պաստերելոզ, սալմոնելոզ ևն): Բուժումը՝ անտիբիոտիկներ, սուլֆանիլամիդային պատրաստուկներ, սննդի ռեժիմի պահպանում: Կանխարգելումը՝ մատղաշների պահվածքի ու խնամքի անասնաբուժական-սանիտարական նորմերի պահպանում, կանոնավոր զբոսանք, լիարժեք կերակրում:

Հիպովիտամինոզներն առաջանում են ոչ լիարժեք կերակրման հետևանքով A, B, C, D ևն վիտամինների պակասությունից: D վիտամինի պակասությունից առաջանում է ռախիտ (D հիպովիտոնոզ), որն աճող մատղաշների ծանր ընդհանուր հիվանդություն է, խանգարվում է D վիտամինի, ֆոսֆորի և կալցիումի փոխանակությունը: Խախտվում է ոսկրերի բնականոն զարգացումը. հոդերը հաստանում են, խողովակավոր ոսկրերը և կողերը՝ ծռվում: Հիմնական պատճառներն են. աճող կենդանիներին զբոսանքից զրկելը, կերաբաժնում կալցիումի և ֆոսֆորի երկարատև բացակայությունը կամ ոչ ճիշտ հարաբերակցությունը, D և A վիտամինի անբավարարությունը, ինչպես նաև ուլտրամանուշակագույն ճառագայթների պակասությունը: Նախատրամադրող պայմաններից են նաև պահվածքի հակասանիտարական վիճակը և կրած հիվանդությունները: Բուժումը. հիվանդ կենդանիների կերակրումը վիտամիններով, կալցիումով, ֆոսֆորով, հարուստ կերերով, մատղաշներին՝ վիտամինացված ձկան յուղ, էրգոկալցիումֆեռոլ, ռետինոլի պատրաստուկ, ուլտրամանուշակագույն ճառագայթներ: Կանխարգելումը. կենդանիների ապահովումը լիարժեք կերերով, զբոսանքի կազմակերպում:

Մատղաշների սպիտակամկանային հիվանդություն. նյութափոխանակության խանգարում, որն ախտահարում է կմախքի և սրտի մկանները, առաջացնում դրանց ֆունկցիոնալ, կենսաքիմիական և ձևաբանական փոփոխություններ, խիստ գունաթափում: Հիմնական պատճառը կերաբաժնում պրոտեինի, հանքային աղերի ու անհրաժեշտ միկրոտարրերի (սելեն, կոբալտ, յոդ, մանգան ևն), A և E վիտամինների ու ծծումբ պարունակող ամինաթթուների (մեթիոնին, ցիստին) անբավարարությունն է: Հիվանդությունն ընթանում է սուր, ենթասուր և քրոնիկական: Ախտանշաններն են՝ ընկճված, պառկած վիճակ, շարժման հավասարակշռության խախտում, մկանային դող, ուժերի անկում, մարմնի լուծանքներ, պուլսի արագացում: Բուժումը. նատրիումի սելենիտի լուծույթի ներարկում, E վիտամին, մեթիոնին: Կանխարգելումը. անապահով տնտեսություններում նորածին հորթերին, գառներին և խոճկորներին նատրիումի սելենիտի լուծույթի և E վիտամինի ներարկում, մայր ոչխարներին հղիության վերջին շրջանում նատրիումի սելենիտի ենթամաշկային միանվագ ներարկում:

*Գ. Գրիգորյան, Հ. Սաֆարյան*

Վարակիչ հիվանդություններից են կոլիբակտերիոզը, պարատիֆոզային և դիպլոկոկային հիվանդությունները, գառների դիզենտերիան ևն:

Կոլիբակտերիոզը մատղաշների սեպտիցեմիային բնույթի հիվանդություն է. բնորոշ է էնտերիտներով, տենդով և մահացության բարձր տոկոսով: Հարուցիչը աղիքային ցուպիկի տարատեսակներն են. զգայունակ են հորթերը, գառները, խոճկորները և մտրուկները: Հորթերը վարակվում են ալիմենտար ճանապարհով, մոր աղտոտված կուրծը ծծելու կամ վարակված կաթի միջոցով: Ախտանշաններն են. ախորժակի բացակայություն, թմրածություն, լուծ, բարձր ջերմություն, քթի լորձաթաղանթի չորություն: Սուր ընթացքը տևում է 1—3 օր: Մահացությունը 80—100% է: Բուժումը. երկարժեք հակատոքսիկ գերիմունային շիճուկ, զամմա-գլոբուլին և կոլիֆագ, ինչպես նաև անտիբիոտիկներ, սուլֆանիլամիդային և նիտրոֆուրանային պատրաստուկներ, հերթական կերակրման կաթի փոխարինումը ֆիզիոլոգիական լուծույթով, արդյունավետ է անտիբիոտիկների և սուլֆանիլամիդային պատրաստուկների զուգակցումը: Կանխարգելումը. անասնաբուժա-սանիտարական և զոոհիգիենային կանոնների կիրառում բեղմնավորման, ծնի և կերակրման ժամանակ, հիվանդների մեկուսացում, վարակված հորթանոցների ընթացիկ ախտահանություն ամեն օր թարմ մարած կրի լուծույթով, զոմաղբի կենսաջերմային մշակում, առողջ մատղաշներին՝ ացիդոֆիլային արգանակի կուլտուրա և գերիմունային շիճուկ: Արդյունավետ է հղի կովերի և մերուկների վակցինացումը, գառների իմունացումը ֆորմոլ-շբային վակցինայով:

Դիպլոկոկոզը մատղաշի գերազանցապես սուր և սեպտիցեմիայի երևույթներով ընթացող հիվանդություն է: Ենթասուր և քրոնիկական ընթացքը բնորոշվում է թոքերի և աղիքների բորբոքումներով: Հարուցիչը նշտարաձև դիպլոկոկն է: Վարակի աղբյուր են հիվանդ և վարակակիր կենդանիները: Վարակումը տեղի է ունենում շնչառական և ստամոքսա-աղիքային ուղիների միջոցով: Ախտանշաններն են. թուլություն, դող, բարձր ջերմություն, շնչառության և պուլսի հաճախացում, քթից լորձի արտազատում, արցունքահոսություն, կոնյունկտիվիտ: Քրոնիկական ընթացքի դեպքում նկատվում է լուծ, հազ, հոդերի բորբոքում, ետին վերջավորությունների լուծանք: Բուժումը. գերիմունային շիճուկ, սուլֆանիլամիդային պատրաստուկներ, անտիբիոտիկներ: Կանխարգելումը. անասնաշենքերի սանիտարական վիճակի կարգավորում, կաթնագեղձերի և արգանդի բորբոքումներով հիվանդ կենդանիների մեկուսացում, հորթերի, գառների, խոճկորների և հղի կովերի վակցինացում:

Սալմոնելոզներ (պարատիֆ). սուր ընթացքին բնորոշ են տենդ և ստամոքսա-աղիքային ուղիների խանգարումներ, իսկ քրոնիկականին՝ նաև թոքերի և հոդերի ախտահարումները: Հարուցիչը սալմոնելների խմբի միկրոօրգանիզմներն են: Վարակումը՝ ալիմենտար ճանապարհով, հաճախ՝ աղտոտված կաթի միջոցով: Ախտանշաններն են՝ դող, լուծ, բարձր ջերմություն, ցավոտ հազ, նկատվում է կոնյունկտիվիտ: Դժվարանում է շնչառական և սիրտ-անոթային համակարգի աշխատանքը: Քրոնիկական ընթացքի դեպքում՝ նաև հոդերի, պորտի բորբոքում, նյարդային երևույթներ, ջղաձգություններ: Բուժումը. անտիբիոտիկներ, սուլֆանիլամիդային պատրաստուկներ, ախտանշանային բուժում, թոքերի բորբոքման դեպքում ցանկալի է անտիբիոտիկները զուգորդել նորսուլֆազոլի, էթազոլի հետ: Կանխարգելումը. հիվանդ և կասկածելի կենդանիների մեկուսացում, պահվածքի սանգոռհիգիենային պայմանների կարգավորում, անասնաշենքերի և գույքի ախտահանում, մատղաշի, հղի կովերի վակցինացում:

*Հ. Բոյախչյան*

**ՄԱՏՅԱՆ**, 1. մագաղաթյա կամ թղթյա ձեռագիր կամ հնատիպ գիրք: Նաև՝ ի մի հավաքված վավերագրերի հատոր: Այն ամենը, ինչ գրի է առնվել և խմբովին (կամ առանձին թղթով, մագաղաթով) զետեղվել միևնույն կազմի մեջ: Մ. է կոչվել նաև նույն գրքի առանձին մասը: Երբեմն Մ. նշանակել է միայն պատմական երկ, ժամանակագրություն. Մովսես Խորենացին (V դ.) իր «Հայոց պատմության» բաժինները անվանել է «մատեան», Սեբեոսի «Պատմության» (VII դ.) ենթավերնագրերից մեկն է «Մատեան ժամանակեան» («Ժամանակագրական մատյան»), Գրիգոր Նարեկացու պոեմը հայտնի է «Մատյան ողբերգության» վերնագրով: Հազվագյուտ դեպքերում Մ. են կոչվել նաև մուրհակը, կոնդակը, թուղթը, մագաղաթը, գրքի զլուխը ևն: 2. Դիվանատներում, դատարաններում, եկեղեցիներում և այլ հիմնարկներում, կազմակերպություններում գործած-

վել են «ժապավինյալ մատյան» կոչված փաստաթղթերի ժողովածուներ, որոնց թերթերը ժապավենով միմյանց կցել, կապել, կնքել են, որպեսզի հետագայում նրանց մեջ նոր փաստաթղթեր չավելացվեն, եղած թղթերը չպոկվեն, նրանց ժամանակագրական հերթականությունը չխախտվի: Մ. են կոչվում նաև ուսուցչական, հաշվապահական, գործավարական և գրասենյակային ու անձնական օգտագործման համար նախատեսված այլ տետրեր, ցուցակներ, հաշվեմատյաններ, վավերագրերի ժողովածուներ: *Գ. Աբգարյան*

**ՄԱՏՅԱՆ ԳՈՒՆԴ**, մատենիկ գունդ, հին ժամանակներում պարսկական բանակի ընտիր հեծելազորը: Գունդը և զինվորները համարվում էին «անմահ». մեռնողներին անմիջապես փոխարինում էին նոր հեծյալներով, որպեսզի գնդի կազմը կայուն լիներ, զորամասը «անմահ» մնար: Եղիշեի (V դ.) վկայությամբ՝ Ավարայրի ճակատամարտում պարսիկները Վարդան Մամիկոնյանի գլխավորած զորքի դեմ հանել են Մ. գ.: *Գ. Աբգարյան*

**ՄԱՏՅՈՒՇԿԻՆ** Միխայիլ Աֆանասևիչ (1676—1737), ռազմական գործիչ, ռուսական բանակի գեներալ-անշեֆ (1726-ից հետո): Եղել է Պետրոս I-ի արտաքին քաղաքականության կողմնակիցներից, ակտիվորեն մասնակցել նրա մղած ռազմ. գործողություններին (Ազովի, Սև, Բալթիկ, Կասպից ծովերը կատարած արշավանքներին): Պարսկ. արշավանքի (տես *Պարսկական արշավանք 1722—1723*) ժամանակ, որպես 4 գնդից կազմված զորախմբի հրամանատար, մասնակցել է Ապշերոնյան թերակղզում մղված մարտերին, հատկապես աչքի ընկել Բաքվի գրավման (1723-ի հուլիսին) մարտերում: Մ-ի կորպուսում են գործել *Հայկական էսկադրոնը* և *Հայ-վրացական միացյալ էսկադրոնը*: Մ-ի անմիջական նախաձեռնությամբ հայազգի մարտիկներին 1725-ին շնորհվել են զինվորական աստիճաններ, հայկ. զորամասերը ընդգրկվել են ռուս. ինտենդանտական սպասարկման մեջ: Մ. սերտ կապեր է հաստատել Արցախի հայ ազատագրական շարժման գործիչների հետ: Պետրոս I-ի մահից (1725) հետո, երբ Եկատերինա I հրաժարվել է շարունակել նրա Արևելյան քաղաքականությունը, Մ. հրաժարականով հեռացել է Կովկասից:

*Գրկ.* Խաչատրյան Հ. Ն., Հայ և ռուս ժողովուրդների զինակցությունը ռուսական բանակի կասպիական արշավանքում, Ե., 1972: *Հ. Խաչատրյան*

**ՄԱՏՆԱԴՐՈՇՄՈՒՄ**, դակտիլոսկոպիա (<հուն. δάκτυλος—մատ, σκοπέω—նայում եմ), *քրեագիտության* բնագավառ, որն ուսումնասիրում է մարդու ձեռքի մաշկային գծանախշերի կառուցվածքը: Մ-ման համար հիմք են ծառայում մատների եղունգային հատվածների ափակողմյան գծանախշերի առանձնահատկությունները. անհատականությունը (ամեն մարդ ունի գծանախշերի եզակի կառուցվածք), հարաբերական կայունությունը (սաղմնավորման պահից գծանախշերի հիմնական առանձնահատկություններն ու ձևերը չեն փոխվում), վերականգնելիությունը (մաշկի մակերեսային վնասվածքի դեպքում գծանախշերը վերականգնվում են): Խմբերի, ենթախմբերի դասակարգելու շնորհիվ գծանախշերը ենթարկվում են քարտարանային հաշվառման: Մատնադրոշմային հաշվառումը օգնում է պարզելու նախկինում հաշվառման ենթարկված այն անձանց ինքնությունը, ովքեր հանդես են գալիս կեղծ անունով կամ հրաժարվում են հայտնել իրենց ով լինելը: Բացի այդ, օգտագործվում է թաքնված հանցագործներին հետախուզելու, չճանաչված դիակները ճանաչելու, դեպքի վայրում հայտնաբերված մատնահետքերով *նույնացում* կատարելու նպատակով: Մատնադրոշմային համեմատումները կատարվում են գծանախշերի ընդհանուր և մասնավոր հատկանիշներով: Եթե մատնահետքերի գծանախշերը դրոշմվել են մասնակի, նույնացում կատարվում է մաշկի ծակոտկենային հատկանիշներով: Մ. առաջին անգամ կիրառվել է Անգլիայում (1901): ՍՍՀՄ-ում մատնահետքերը վերցնում են միայն հանցագործներից՝ մատնադրոշմային հատուկ բլանկների վրա: *Բ. Հովհաննիսյան*

**ՄԱՏՆԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ**, դակտիլոլոգիա (< հուն. δάκτυλος — մատ և ...*լոգիա*), խոսքի յուրահատուկ ձև, որի ընթացքում բառերն արտահայտվում են ձեռքի մատների միջոցով: Սկզբնական շրջանում Մ-ից օգտվել են ուխտյալ լռակյացները (հաղորդակցվելու պահանջն ավելի ուժեղ է եղել եկեղեցական կանոններից), հետագայում այն դարձել է խուլերի հաղորդակցման միջոց: Միջազգային լեզու չէ, օգտվում են միայն նույն լեզվով խոսող խուլերը: Գոյություն ունի նաև գրավոր ձևը (մատնագրություն-դակտիլոգրաֆիա): Խոսակցությունը տեղի է ունենում պայմանական նշաններ պատկերող այբուբենի միջոցով: Մ-յան սկզբունքները առաջին անգամ մշակվել են Իսպանիայում (Պեդրո Պոնսեն, XVI դ.): Խոսակցության նշանների համակարգը մեր երկրում գրվել է 1950-ական թթ. (Ի. Ֆ. Գեյլման), իսկ մեր հանրապետությունում՝ 1961-ին (Վ. Գ. Խալաթյան)՝ ռուս. այբուբենի հիման վրա՝ բաղկացած 39 ստեղնային նշաններից:

Մատնախոսության հայերեն այբուբենը




Մատնախոսվում է աջ ձեռքով, ափն ու աչքերը ուղղելով խոսակցին, պահպանվում են ուղղագրության մշակված նորմաները:

Խուլերի մանկապարտեզներում և դպրոցների նախնական դասարաններում Մ. բանավոր խոսքի ուսուցման հիմնական, իսկ բարձր դասարաններում՝ օժանդակ միջոց է: *Հ. Վաղարշակյան*

**ՄԱՏՆԱԿՑՈՒՄ**, սինդակտիլիա (< հուն. σύν — միասին և δάκτυλος — մատ), ձեռքի կամ ոտքի մատների բնածին ձևախախտում: Արտահայտվում է մատների սերտաճմամբ: Լինում է թաղանթային, մաշկային և ոսկրային: Ըստ պրոցեսի տարածման տարբերում են ոչ լրիվ (սերտաճում է ֆալանգների հիմքային հատվածը), լրիվ (մատների երկարությամբ) կամ ծայրային Մ.: Ոսկրային ձևն առաջանում է պտղի զարգացման շրջանում մատների տարբերակման կասեցման, մաշկայինը և թաղանթայինը՝ ամնիոն թաղանթի խոռոչում պտղի կաշկանդված վիճակի պատճառով: Մաշկային Մ. հանդիպում է առավել հաճախ: Մատների ֆունկցիայի խանգարումը պայմանավորված է սերտաճման աստիճանով:

Բուժումը՝ վիրահատական:

**ՄԱՏՆԱՇՈՒՆՉ**, պանարիցիում [< լատ. panaricium (հուն. παρωνυχία-ի աղավաղումը) — մատնաշունչ], մատի հյուսվածքների սուր թարախային բորբոքում: Հիմնական պատճառը մատի մաշկի ամբողջականության խախտումն է և թարախածին մանրէներով վարակվելը: Ըստ բորբոքային պրոցեսի տեղադրության Մ. լինում է մաշկային (բշտային), հարեղնգային (պարոնիխիա), ենթաեղնգային (ֆլեգմոնա), ջլային, հոդային և ոսկրային: Մատի բոլոր հյուսվածքների բորբոքումը կոչվում է պանդակտիլիտ: Հիմնական ախտանշաններն են՝ սուր, պուլսող ցավեր, մատի ուռածություն, մաշկի կարմրություն, շարժումների սահմանափակում: Երբեմն ուղեկցվում է դողով և ջերմության բարձրացմամբ՝ 38°C: Բարդությունները. ջլային Մ-ի (հատկապես բթամատի և ճկույթի) դեպքում կարող են առաջանալ մեռուկացման պրոցեսներ, վարակի տարածում դաստակի և նախաբազկի վրա, մատների ֆունկցիայի խանգարում: Հոդայինի դեպքում՝ միջֆալանգային հոդերի թարախային բորբոքում: Առավել վտանգավոր է ոսկրային Մ., որը կարող է հանգեցնել մատների ծայրային ֆալանգների օստեոմիելիտի: Կանխարգելումը. մատների պահպանումը վնասումներից, քերծվածքների, միկրովնասվածքների մշակումը յոդի թուրմով:

Բուժումը՝ վիրաբուժական:

**ՄԱՏՆԱՎԱՆՔ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Խլաթի գավառում: 1909-ին ուներ 103 (12 ընտանիք) հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործու-

թյամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը տեղահանվել և զոհվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ:

**ՄԱՏՆԱՔԱՇ**, մ ա տ ն ք ա շ, հայկական հացատեսակ: Թխում են ցորենի ալյուրից: Լինում է երկարավուն կամ կլոր: Անվանումն առաջացել է *հացի* երեսին մատներով ակոսներ անելու հետևանքով: Այժմ Մ. թխում են հացի գործարաններում, և Հայաստանում տարածված հիմնական հացատեսակներից է: *Լ. Պետրոսյան*

**ՄԱՏՆԵՐ**, տես *Կանեյլյուրներ*:

**ՄԱՏՆՈՑՈՒԿ** (Digitalis), դ ի գ ի տ ա լ ի ս, խլածաղկազգիների ընտանիքի բազմամյա խոտաբույսերի, երբեմն՝ կիսաթփերի և թփերի ցեղ: Տերևները հերթադիր են, երկարավուն, ծաղիկներն՝ անկանոն, խոշոր, դեղին կամ կարմրավուն, միակողմանի ողկույզներով: Ծաղկապսակը հնգանդամ է, պսակը՝ երկշուրթ, հիշեցնում է մատնոցի (այստեղից էլ՝ անվանումը): Պտուղը տուփիկ է: Տարածված է Հյուսիսային կիսագնդում (շուրջ 35 տեսակ, ՍՍՀՄ-ում՝ 6, ՀՍՍՀ-ում՝ 2): Մ-ի բոլոր տեսակներն էլ թունավոր են: Սրտի մի շարք հիվանդությունների դեպքում օգտագործվում են Մ-ի որոշ տեսակների (խոշորածաղիկ Մ., ժանգոտ Մ., թունավոր Մ. ևն) չորացած տերևները և դրանցից ստացվող պատրաստուկները (գիտալեն, դիգալեն, լանտոզիդ, դիգիցիլեն ևն), որոնք կարգավորում են սրտի աշխատանքը, արագացնում միզազատությունը, իջեցնում այտուցները: Մ-ի պատրաստուկներն օգտագործվում են փոշիների, թուրմի, մզվածքի ձևով, բժշկի խիստ հսկողությամբ: Մշակվում է նաև որպես դեկորատիվ բույս:

**ՄԱՏՈՉԿԻՆ ՇԱՐ**, նեղուց, Նոր երկրի Հյուսիսային և Հարավային կղզիների միջև: Միացնում է Բարենցի և Կարայի ծովերը: Ափերը բարձրադիր են, տեղ-տեղ՝ զառիթափ: Երկարությունը մոտ 100 *կմ* է, լայնությունը (ամենանեղ տեղում)՝ մոտ 0,6 *կմ*, խորությունը՝ 12 *մ*: Տարվա մեծ մասը ծածկված է սառույցով: Ափին են Մատոչկին Շար, Ստոլբովոյ արդյունագործական ավանները:

**ՄԱՏՉ** (անգլ. match), մրցում երկու կամ ավելի մարզիկների, թիմերի միջև: XIX դ. 2-րդ կեսից Մ. են անվանել պարբերաբար անցկացվող մարզական հանդիպումները: XX դ. կեսին ստացել է ավելի լայն տարածում, երբ ավանդական են դարձել տարբեր երկրների մարզիկների (թեթևաթլետներ, չմշկորդներ, շախմատիստներ ևն) հանդիպումները: XIX դ. վերջին և XX դ. սկզբին Մ. սկսեցին անվանել նաև առանձին մարզիկների, այդ թվում՝ աշխարհի չեմպիոնի կոչման համար մրցությունը (պրոֆեսիոնալ բռնցքամարտ, շախմատ) և որոշ մարզական խաղերի (ֆուտբոլ, բասկետբոլ, հոկեյ ևն) մրցումները:

**ՄԱՏՅԱՆՈՎ** Նազար Մատքարիմովիչ (ծն. 1.1.1923, Խիվա, Ուզբեկական ՍՍՀ Խորեզմի մարզում), սովետական պետական և կուսակցական գործիչ: Անասնաբուժական գիտ. դ-ր (1969), պրոֆեսոր (1971): ՍՄԿԿ անդամ 1949-ից: 1949—59-ին աշխատել է իր մասնագիտությամբ: 1959—1960-ին եղել է Ուզբ. ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրի տեղակալ, 1960—61-ին՝ Ուզբեկստանի կոմկուսի Բուխարայի մարզկոմի քարտուղար, 1962—65-ին՝ առաջին քարտուղար; 1961—62-ին՝ Ուզբ. ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, 1965—70-ին՝ Ուզբեկստանի կոմկուսի ԿԿ քարտուղար: 1970-ի սեպտեմբերից Մ. Ուզբ. ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության նախագահն է, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության նախագահի տեղակալ (1970-ի դեկտեմբերից): ՍՄԿԿ XXIV—XXV համագումարներում ընտրվել է ՍՄԿԿ ԿԿ անդամ: ՍՍՀՄ VII—X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ է: Պարգևատրվել է Լենինի և երկու այլ շքանշաններով:

**ՄԱՏՎԵԵՎ** Ալեքսանդր Տերենտիևիչ [13(25).8.1878, Սարատով —22.10.1960, Մոսկվա], ռուս սովետական քանդակագործ: ՌՍՖՍՀ արվեստի վաստ. գործիչ (1931): ՍՄԿԿ անդամ 1940-ից: 1899—1902-ին սովորել է Մոսկվայի գեղանկարչության, քանդակագործության և ճարտարապետության ուսումնարանում: 1906—07-ին աշխատել է Փարիզում: «Միր իսկուստվա», «Գոլուբայա ռոզա», ՕՌՍ (ռուս քանդակագործների միավորում) խմբավորումների անդամ: Մ-ի ստեղծագործության առանցքային թեման մարդկային մերկ մարմինն է (Վ. Է. Բորիսով-Մուսատովի մահարձանը Տարուսայում, գրանիտ, 1910): Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո մասնակցել է *մոնումենտալ պրոպագանդայի* լենինյան ծրագրի իրականացմանը (Կ. Մարքսի հուշարձանը Պետրոգրադում, գիպս, 1918, չի պահպանվել): «Հոկտեմբեր» (գիպս, 1927, Ռուսական թանգարան, Լենինգրադ) արձանախմբում դասականորեն պարզ կերպարների շնորհիվ մարմնավորել է հեղափոխական հերոսին: Մ. հոգեբանական նրբազծերի հագեցվածությամբ է կերտել ռուս գրողների կերպարները (Ա. Ս. Պուշկինի արձանը, պլաստիլին, 1948—60, քանդակագործի արվեստանոցում, Մոսկվա), ինչպես և հաստոցային դիմաքանդակները (Ինքնադիմաքանդակ, բրոնզ, 1939, Ռուսական թանգարան): Պետրոգրադի ճենապակու գործարանի համար կատարել է մանրաքանդակներ (1920-ական թթ.): Իր ստեղծագործությամբ և մանկավարժական գործունեությամբ (1918—48-ին դասավանդել է Լենինգրադի Գեղարվեստի ակադեմիայում, 1940—48-ին՝ Մոսկվայի Գեղարվեստի ինստ-ում) Մ. մեծ ազդեցություն է ունեցել սովետական քանդակագործության զարգացման վրա:



Ա. Տ. Մ ա տ վ ե և. «Կնոջ մարմին», բրոնզ (1937, Տրետյակովյան պատկերասրահ, Մոսկվա)

*Գրկ.* М у р и н а Е., А. Т. Матвеев, М., 1964.

**ՄԱՏՐԻՑ** (գերմ. Matrize, < լատ. matrix — աղբյուր, սկիզբ), n տող և m սյունակ ունեցող ուղղանկյուն աղյուսակ՝

$$\hat{A}=\begin{pmatrix} a_{11}, a_{12}, \cdots, a_{1m} \\ a_{21}, a_{22}, \cdots, a_{2m} \\ \cdots\cdots\cdots \\ a_{n1}, a_{n2}, \cdots, a_{nm} \end{pmatrix}, \quad \hat{A}=(a_{ij})$$

որտեղ $a_{ij}$ տարրերի (թվեր, ֆունկցիաներ ևն) նկատմամբ կարելի է կատարել *հանրահաշվական գործողություններ* ($n\times m$-չափանի Մ.): Եթե $n=m$, ապա $\hat{A}$ Մ. կոչվում է n-րդ կարգի քառակուսի Մ., որի գլխավոր անկյունագծի $a_{11}, a_{22}, \ldots, a_{nn}$ տարրերի գումարը կոչվում է $\hat{A}$ Մ-ի հ ե տ ք: $\hat{E}$ քառակուսի Մ. կոչվում է մ ի ա վ ո ր Մ., եթե նրա գլխավոր անկյունագծի տարրերը 1-եր են, իսկ մյուս տարրերը՝ 0: Միայն 0-ներից կազմված Մ. կոչվում է զ ր ո յ ա կ ա ն Մ.: Միևնույն չափանի $\hat{A}=(a_{ij})$, $\hat{B}=(b_{ij})$ Մ-ների համար $\alpha\hat{A}+\beta\hat{B}$ (α-ն և β-ն թվեր են) գումարը որոշվում է $\alpha\hat{A}+\beta\hat{B}=(\alpha a_{ij}+\beta b_{ij})$ բանաձևով: $n\times m$-չափանի $\hat{A}$ և $m\times k$-չափանի $\hat{B}$ Մ-ների արտադրյալը $n\times k$-չափանի Մ. է և որոշվում է այսպես.

$$\hat{A}\cdot\hat{B}=(a_{i1}b_{1j}+\cdots+a_{im}b_{mj});\quad i=1,\cdots,n,\ j=1,\cdots,k$$

n-րդ կարգի բոլոր քառակուսի Մ-ների բազմությունը նշված գործողությունների նկատմամբ կազմում է զուգորդական *օղակ*, իսկ $n\times m$-չափանի բոլոր Մ-ների բազմությունը՝ *գծային տարածություն*: $\hat{A}$ Մ-ի *որոշիչը* նշանակվում է $|\hat{A}|$ կամ det $\hat{A}$: A Մ-ի առավելագույն գծորեն անկախ տողերի (կամ սյունակների) թիվը կոչվում է Մ-ի ռ ա ն գ և նշանակվում՝ $r(\hat{A})$: $\hat{A}$ քառակուսի Մ. կոչվում է հակադարձելի, եթե գոյություն ունի այնպիսի $\hat{A}^{-1}$ Մ. (կոչվում է $\hat{A}$-ի հակադարձ Մ.), որ $\hat{A}\hat{A}^{-1}=\hat{A}^{-1}\hat{A}=\hat{E}$: Հայտնի են Մ-ների մի շարք կարևոր դասեր. սիմետրիկ, ինքնահամալուծ, ունիտար, մարկովյան, լյապունովյան, ժորդանյան ևն: Մաթեմատիկայում և կիրառություններում հանդիպում են նաև այնպիսի Մ-ներ, որոնք կազմված են անվերջ թվով տողերից կամ սյունակներից, և այնպիսիներ, որոնց տարրերը պատկանում են որևէ օղակի:

Մ-ները օգտակար միջոց են մաթեմատիկական և կիրառական շատ խնդիրներ

լուծելու համար. օրինակ՝ գծային հավասարումների համակարգերի լուծման ժամանակ: Դիֆերենցիալ հավասարումների տեսության մեջ կարևոր է Մ-ի սեփական արժեքների և սեփական վեկտորների գտնելու խնդիրը: Մ-ները մեծ կիրառություն ունեն նաև քվանտային մեխանիկայում:

**ՄԱՏՐԻՑԱՅԻՆ ՄՈԴԵԼՆԵՐ** տնտեսագիտության մեջ, տնտեսամաթեմատիկական հաշվեկշռային մոդելների առավել տարածված տեսակներից: Ունեն ուղղանկյուն աղյուսակի (*մատրիցի*) ձև, որում արտացոլվում է արտադրության վրա կատարված ծախքերի, արտադրանքի բաշխման և նորաստեղծ արժեքի կառուցվածքը: Այս տիպի մոդելներում միաձուլվում են արտադրանքի արտադրության և ռեսուրսների հաշվեկշիռները: Մ. մ. բաղկացած են չորս քառորդակից. I քառորդակում արտացոլվում են մոդելավորվող օբյեկտի ներարտադրական կապերը, II-ում՝ արտադրական գործունեության արդյունքը, III-ում՝ սկզբնական ռեսուրսների ծախսը, որն ստացվում է դրսից, և նորաստեղծ արժեքը, IV-ում՝ նորաստեղծ արժեքի մասնակի վերաբաշխումը:

Մ. մ-ի հիմնական հավասարումներն են՝

$$\sum_j x_{ij}+y_i=x_i \text{ և } \sum_i x_{ij}+z_j=x_j,$$

որտեղ i-ն և j-ն մոդելավորվող օբյեկտի ստորաբաժանումների ինդեքսներն են, $x_i$-ն i-րդ ստորաբաժանման համախառն արտադրանքի ծավալն է, $x_{ij}$-ն i-րդ ստորաբաժանման մատակարարումն է j-րդ ստորաբաժանմանը, $y_i$-ն i-րդ ստորաբաժանման վերջնական արդյունքի ծավալն է, $z_j$-ն j-րդ ստորաբաժանման սկզբնական ռեսուրսների ծախսն է և նորաստեղծ արժեքը:

Մ. մ. մշակվում են ժողտնտեսության տարբեր մակարդակների համար: Մակրոտնտեսական օբյեկտների (ամբողջ ժողտնտեսության կամ տնտ. շրջանի) Մ. մ. կրում են միջճյուղային հաշվեկշիռ անվանումը:

Մ. մ-ի հաջորդ տիպը արդ. ձեռնարկությունների, սովետական տնտեսությունների, կոլտնտեսությունների տեխարդֆինպլանի մոդելն է: Մ. մ-ի տարատեսակներն են՝ միջճյուղային-միջշրջանային հաշվեկշիռները, ինֆորմացիոն մատրիցները: Որոշակի առումով Մ. մ. են համարում նորմատիվային տնտեսամաթեմատիկական մոդելների սկզբնական ինֆորմացիայի գրեւաձևը: Դրանց օգնությամբ կարելի է որոշել ամբողջ ժողտնտեսության, նրա տարբեր օղակների բոլոր հիմնական ցուցանիշները՝ փոխկապվածության մեջ և լրիվ հաշվեկշռված ձևով: Ինֆորմացիայի ներկայացումը մատրիցային տեսքով բնութագրում է մոդելավորվող օբյեկտում կատարվող տնտ. պրոցեսները, հեշտացնում ինֆորմացիայի մուտքը ԷՀՄ-ներ և ստացված արդյունքների տնտեսամաթեմատիկական վերլուծությունը:

*Գ. Բախշյան*

**ՄԱՏՐԻՔՍ** (լատ. matrix, <mater — հիմք, բառացի՝ մայր), ցիտոպլազմայի և ներբջջային կառուցվածքների ներքին տարածությունները լցնող միատարր նյութ: Տարբերում են ցիտոպլազմայի, միտոքոնդրիաների, բջջի կորիզի, պլաստիդների և այլ օրգանոիդների Մ-ներ: Ցիտոպլազմայի Մ. (հիմնական նյութ, հիալոպլազմա) սպիտակուցների, նուկլեինաթթուների, բազմաշաքարների ևն բարդ կոլոիդ համակարգ է, ունակ հեղուկ վիճակից վերածվել ժելեի, և հակառակը, որը կարող է մասնակցել բջջաթաղանթների, միկրոխողովակների ևնի առաջացմանը: Կազմված է գլխավորապես սպիտակուցներից և ֆերմենտներից (բջջի սպիտակուցների 20—25%-ը, գլիկոլիզի, ազոտային հիմքերի, ամինաթթուների, լիպիդների, շաքարների նյութափոխանակության ֆերմենտներ): Մ. միավորում է բջջային կառուցվածքները մեկ ամբողջության մեջ, ապահովում դրանց քիմ. փոխազդեցությունները, նուկլեոտիդների, ճարպաթթուների, շաքարների ևնի տեղափոխությունը, իոնափոխանակությունը, պահեստանյութերի կուտակումը: Միտոքոնդրիաների Մ. մոտ 50% սպիտակուցից բաղկացած նուրբ կառուցվածք ունեցող դոնդողանման կիսահեղուկ զանգված է: Պարունակում է ԴՆԹ և միտոքոնդրիային ռիբոսոմներ: Թույլ է զարգացած մեծ թվով կատարներ ունեցող միտոքոնդրիաներում, և հակառակը:

**ՄԱՏՐՈՍՈՎ** Ալեքսանդր Մատվեևիչ (1924—1943), Սովետական Միության հերոս (19.6.1943, ետմահու): ՀամԼԿԵՄ անդամ 1942-ից: Դաստիարակվել է մանկատանը և մանկական աշխատանքային գաղութում: 1942 թվականի հոկտեմբերին զորակոչվել է բանակ և ուղարկվել հետևակային ուսումնարան: Նոյեմբերին կամավոր մեկնել է ռազմաճակատ, որպես



Ա. Մ. Մատրոսով

56-րդ գվարդիական հրաձգային դիվիզիայի (Կալինինյան ռազմաճակատ) 254-րդ գնդի շարքային: 1943-ի փետր. 23-ին Չեռնուշկի գյուղի համար մղված մարտում, մարմնով ծածկելով թշնամու դզոտի հրակնատը, իրեն զոհաբերել է ստորաբաժանման հաջողությունն ապահովելու համար: Մ-ի անունը շնորհվել է 254-րդ գնդին և հավերժ գրանցվել 1-ին վաշտի ցուցակում: Ուֆայում կանգնեցված է Մ-ի հուշարձանը:

**ՄԱՏՈՒ ԳՐՈՍՈՒ** (Mato Grosso), նահանգ Բրազիլիայի արևմուտքում: Տարածությունը 881 հզ. *կմ*² է, բն.՝ 900 հզ. (1977): Վարչական կենտրոնը՝ Կույաբա: Տնտեսության հիմնական ճյուղը անասնապահությունն է: Մշակում են բրինձ, եգիպտացորեն, մանիոկ, շաքարեղեգ: Քորումբա քաղաքի մոտ արդյունահանվում է մանգանի և երկաթի հանքաքար: Կան բամբակեղենի և սննդի արդյունաբերության ձեռնարկություններ: Գլխավոր կենտրոններն են՝ Կույաբան, Քորումբան:

**ՄԱՏՈՒ ԳՐՈՍՈՒ** (Mato Grosso), սարավանդ Բրազիլական սարահարթի հս-արմ-ում: Տապաժոս, Շինգու և Պարագվայ գետերի վերին հոսանքների միջագետքում: Առավելագույն բարձրությունը 893 *մ* է: Կազմված է գլխավորապես պալեոզոյան ավազաքարերից: Կլիման մերձհասարակածային է՝ շոգ, խոնավ ամառով:

**ՄԱՏՈՒ ԳՐՈՍՈՒ ԴՈՒ ՍՈՒԼ** (Mato Grosso do Sul), նահանգ Բրազիլիայի հվ-արմ-ում: Տարածությունը 350,5 հզ. *կմ*², բն.՝ 1400 հզ. (1977): Վարչական կենտրոնը՝ Քամփու Գրանդի: Մինչև 1977-ը եղել է *Մատու Գրոսու* նահանգի կազմում:

**ՄԱՏՈՒԼԻՍ** Յուզգա Յուզովիչ [ծն. 7(19). 3.1899, Տատկոնիս (այժմ՝ Լիտվ. ՍՍՀ Կուպիշկսկու շրջանում)], սովետական ֆիզքիմիկոս: ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ (1946), Լիտվ. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1941) և պրեզիդենտ (1946): Սոցիալիստական աշխատանքի հերոս (1965): ՍՄԿԿ անդամ 1950-ից: Ավարտել է Կաունասի համալսարանը (1929): Լիտվ. ՍՍՀ ԳԱ քիմիայի և քիմիական տեխնոլոգիայի ինստ-ի դիրեկտոր (1956-ից): Հիմնական աշխատանքները վերաբերում են լուսաքիմիային և էլեկտրաքիմիային, մետաղների էլեկտրանստեցման տեսությանը, տված հատկություններով մետաղական ծածկույթների ստացման տեխնոլոգիայի գիտական հիմունքների մշակմանը: Հեղինակ է կոլոիդների քիմիայի դասընթացի և ֆիզիկական քիմիայի ձեռնարկի (հրտ. Կաունասում, 1947-ին և 1948-ին): Պարգևատրվել է Լենինի 4 շքանշանով:

**ՄԱՏՈՒՌ** (< հուն. μαρτύριον — վկայարան, < μάρτυρος — վկա, նահատակ), վաղ միջնադարում վկայարան, փոքր եկեղեցի, աղոթատեղի շինված վկայի՝ նահատակի գերեզմանի կամ մասունքների վրա, ինչպես նաև նրա հիշատակին: Հետագայում Մ. են անվանել ընդհանրապես փոքր եկեղեցիները: Մ-ները արտաքուստ խաչաձև, կլոր, բազմանիստ կամ ուղղանկյուն հատակագծով, գմբեթավոր կամ թաղածածկ, բեմով կամ առանց բեմի առանձին կանգնած կառույցներ են բնակավայրերում, վանքային համալիրներում, ճանապարհների վրա, գերեզմանատներում: Միջնադարյան Հայաստանի Մ-ների (մեծ մասամբ նաև *Թուխ Մանուկ* կոչվող) տարածված ձևը թաղածածկ դահլիճն է՝ արլ. կիսաշրջանաձև կամ ուղղանկյուն աբսիդով:

*Մ. Հասրաթյան*

**ՄԱՏՈՒՏԱԿ** (Glycyrrhiza), քաղցրարմատ, բիան, թիթեռնածաղկավորների ընտանիքի բազմամյա կոճղարմատավոր խոտաբույսերի ցեղ: Տերևները կենտ փետրավոր են, ծաղիկները հավաքված երկարավուն ողկույզներում, պսակը՝ բաց մանուշակագույն: Պտուղը ունդ է՝ 1—8 սերմով: Հայտնի է Մ-ի 18 տեսակ (ՍՍՀՄ-ում՝ 12, ՀՍՍՀ-ում՝ 2): Աճում է բոլոր մայր ցամաքների բարեխառն ու մերձարևադարձային գոտիներում: Մ-ի արմատը և կոճղարմատը պարունակում են գլիցիռիզին, գլիկոզիդներ, եթերա-



Մերկ մատուտակ

յուղ, վիտամին C ևն: Օգտագործվում է ծխախոտի, գարեջրի, սննդի արդյունաբերության և բժշկության մեջ:

**ՄԱՏՈՒՑՈՒՄՆԵՐԻ ՏՈՒՓ**, *մետաղահատ հաստոցների* բազմօղակ մեխանիզմ. նախատեսված է մատուցման փոփոխման համար: Բաղկացած է իրանի (տուփի) մեջ տեղավորված փոխարկվող ատամնավոր փոխանցումներից: Մ. տ-ի կինեմատիկայի առանձնահատկությունները հնարավորություն են տալիս դետալի մշակման ժամանակ գործիքի մատուցման շարժումը համաձայնեցնել նախապատրաստուկի նկատմամբ գործիքի այլ շարժումների հետ:

**ՄԱՐ ԱԲԱՍ ԿԱՏԻՆԱ**, Մարաբա Մըծուրնացի, պատմագիր, ազգությամբ՝ ասորի: Մ. Ա. Կ-ի մատյանը Մովսես Խորենացու «Հայոց պատմության» և Սեբեոսի երկին կցված՝ Անանուն պատմիչի, այսպես կոչված, «Նախնական պատմության» ամենակարևոր աղբյուրներից է: Ըստ Մովսես Խորենացու, Մ. Ա. Կ. ապրել է մ. թ. ա. II դ.: Որոշ հետազոտողներ (Ն. Մառ, Ն. Ադոնց, Հ. Մանանդյան) նրան համարում են IV դ. հեղինակ, որը գրել է հունարեն: Մ. Ա. Կ. օգտագործել է թե՛ բանավոր և թե՛ գրավոր (հուն. մի ժամանակագրություն, որը թերևս կազմված էր հայոց արքունի դիվանի վավերագրերից) աղբյուրներ, որոնցից քաղել է հայ ժողովրդի պատմության հնագույն շերտերն արտացոլող մի շարք առասպելներ ու ասքեր: Մատյանում տեղ են գտել նաև պարթև Արշակունիների պատմության որոշ դրվագներին և հայ Արշակունիների սկզբնաշրջանին վերաբերող տեղեկություններ:

Մ. Ա. Կ-ի կամ նրա մատյանի գոյության փաստը ժխտելու փորձերը իրենց չեն արդարացրել: Նրա մատյանը նախամեսրոպյան շրջանի հայ պատմագիտական մտքի կարևորագույն հուշարձաններից է:

*Գրկ.* Սարգսյան Գ. Խ., Նախամեսրոպյան շրջանի հայ պատմագրությունը, «ՊԲՀ», 1969, № 1: Манандян Я. А., «Начальная история Армении» Мар Абаса, «Палестинский сборник», в. 2 (64—65), М.—Л., 1956, с. 69—86. *Գ. Սարգսյան*

**ՄԱՐԱԲԱ** (արաբ. մյուրաբաա — քառորդ բաժից), ֆեոդալական կախյալ գյուղացիների խավ Թուրքիայում: Արևմտյան Հայաստանում հատկապես տարածվել է XIX դ. վերջին և XX դ. սկզբին, երբ Աբդուլ Համիդ II-ի հայահալած քաղաքականության հետևանքով բազմահազար հայ գյուղացիներ զրկվել էին հողից: Արևմտյան Հայաստանի մի շարք գավառներում Մ-ները կազմել են գյուղական բնակչության ավելի քան 70—80%: Եղել են թե՛ բոլորովին ընչազուրկ Մ-ներ և թե՛ երկրագործական գործիքներ, բանող անասուններ ու աննշան հողակտոր ունեցողներ: Մ-ները գյուղերով կամ ընտանիքներով վարձակալել են (որոշակի ժամկետով) աղաների ու բեկերի հողերը (երբեմն նաև բանող անասուն, երկրագործական գործիքներ) և դրա դիմաց վճարել ստացած բերքի մի մասը: Կատարել են նաև աղաների, բեկերի տնային աշխատանքները: Մ-ների շահագործումը ծանր է եղել հատկապես Տարոնում ու Վասպուրականում (ուր երբեմն ճորտացվել են) և համեմատաբար թեթև՝ Բարձր Հայքում: Այն մեղմացել է, երբ կապիտալիստական հարաբերությունների զարգացման հետևանքով Մ-ները վերածվել են բատրակների: Սակայն Մ-ների ճնշող մեծամասնությունը ենթարկվել է ֆեոդալական շահագործման: Հայ Մ-ները Մեծ եղեռնի ժամանակ բնաջնջվեցին կամ գաղթեցին այլ երկրներ: Ներկայումս գոյատևում են թուրք և քուրդ Մ-ներ:

*Գրկ.* Ա-Դո, Վանի, Բիթլիսի և Էրզրումի վիլայեթները, Ե., 1912: Համբարյան Ա. Ս., Ագրարային հարաբերությունները Արևմտյան Հայաստանում (1856—1914), Ե., 1965: *Ա. Համբարյան*

**ՄԱՐԱԲՈՒ** (Leptoptilus), արագիլների ընտանիքի թռչունների սեռ: Հայտնի է Մ-ի 3 տեսակ՝ աֆրիկական Մ., հնդկական Մ. և ճավայական Մ.: Փետրազուրկ գլխով և հսկայական կտուցով խոշոր, ծանրամարմին թռչուններ են (բարձրությունը՝ 110—150 *սմ*, թևերի բացվածքը՝ մինչև 3 *մ*, կտուցը՝ 30 *սմ*, քաշը՝ 5—6 *կգ*): Պարանոցի առջևի մասում ունեն փետրազուրկ մսալի ելուստ (ճավայական



Աֆրիկական մարաբու

Մ. չունի), որի վրա հենում են իրենց կտուցը: Բնադրում են ծառերի, ժայռերի վրա. աֆրիկականը և հնդկականը՝ գաղութներով, ճավայականը՝ զույգերով: Դնում են 2—4 ձու, թխսում են և՛ էգը, և՛ արուն (մոտ 1 ամիս): Սնվում են գլխավորապես լեշով, ինչպես նաև գորտերով, կրծողներով և միջատներով:

**ՄԱՐԱԳ**, ձմռան անասնակեր (խոտ, հարդ) պաշարելու կառույց: Լինում է հիմնականում կալին մոտ, երբեմն՝ գոմին կից կամ գոմի վերնահարկում: Գոմից անջատ լինելու դեպքում Մ-ի ներսում զետեղվել է հարդը, տափարակ բացօթյա կտուրի կամ երկթեք կղմինդրածածկ տանիքի մեջ՝ խոտը: Այս դեպքում անասնակերը գոմ է հասցվել կողովներով: Եթե Մ. եղել է գոմի վերնահարկ-տանիքում, անասնակերը գոմ է մղվել կտուրում բացված անցքով: Վաղ աշնանը, կալսման շրջանում, Մ. օգտագործվել է որպես կալվորների ժամանակավոր կացարան, ուր զետեղվել են նաև կալուկուտի հետ առնչվող պարագաները: Անձրևի ու ձյան ժամանակ տակավին չկալսված հացահատիկը լցրել են Մ., մինչև որ հնարավոր լիներ կրկին կալսել: Անտառոտ շրջաններում Մ-ում, հարդի մեջ, հասունանալու համար պահվել են վայրի տանձ ու խնձոր: *Դ. Վարդումյան*

**ՄԱՐԱԶՄ** (< հուն. μαρασμός — հյուծում, մարում) հոգեկան, մարդու հոգեկան գործունեության համարյա լրիվ ընդհատում, որը պայմանավորված է գլխուղեղի կեղևի ապաճմամբ և ուղեկցվում է օրգանիզմի ընդհանուր հյուծմամբ: Հանդիպում է ծերունական թուլամտության, պրոգրեսիվ պարալիզի վերջին փուլում և գլխուղեղի այլ հիվանդությունների դեպքում:

**ՄԱՐԱԹԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, մարաթի ժողովուրդների գրականությունը (Հարավ-Արևմտյան Հնդկաստան, Մահարաշտրա նահանգ)՝ մարաթի լեզվով: Կազմավորումը սերտորեն կապված է XI—XII դդ. կրոնա-բարենորոգչական շարժումների հետ, որոնց գաղափարախոսները հրաժարվեցին սանսկրիտից և դիմեցին ժող. կենդանի լեզուներին: Միջնադարյան Մ. գ-յան խոշորագույն ներկայացուցիչներն են բանաստեղծներ Մուկունդարաջան (1128—98), Դնյանեշվարը (1271—96), Նամդևը (1270—1350), Էկնաթը (1533—99), Տուկարամը (1608—49), Ռամդասը (1608—81) ևն: XVII դ. Մ. գ. հարստացավ պովադա (հերոսական բալլադ) և լավնիի (սիրային քնարերգություն) ժող. բանաստեղծական ձևերով: Առաջացավ բրահմանա-ազնվականական «գիտական պոեզիա»-ն (Վաման, Մորոպանտ): XIX դ. 1-ին կեսին մարաթական իշխանություններում հաստատվեց անգլ. գաղութային տիրապետություն: Մարաթական մտավորականությունը ծանոթացավ բուրժ. փիլիսոփայությանն ու գրականությանը, Հնդկաստանում զարգացան բուրժ. հարաբերությունները, այս հանգամանքը նպաստեց Մ. գ-յան նորացմանը: Առաջատար ժանրը դարձան սոցիալ-կենցաղային ու պատմական վեպը և կենցաղային ու քաղ. դրաման: XIX դ. վերջին հայտնվեց պատմվածքի ժանրը, պոեզիան հագեցվեց քաղ. բովանդակությամբ: Վ. Բրահմաչարիի (1825—70), Ջ. Փուլեի (1827—1890), Հ. Աիարքարի (1856—95), Բ. Թիլաքի (1856—1920) հրապարակախոսությունը և արձակագիր Հ. Ապտեի (1864—1919), բանաստեղծներ Կեշավսուտի (Կ. Դամլե, 1866—1905), Ն. Գուպտեի (1872—1947), դրամատուրգներ Գ. Դևալի (1854—1916), Կ. Քադիլքարի (1872—1948) և ուրիշների ստեղծագործությունները լի էին ֆեոդալական սովորույթների ու սահմանափակումների, ինչպես նաև անգլ. գաղութարարների դեմ բողոքով: 1920-ական թթ. պոեզիան ներկայացված է «Արևի ճառագայթ» ռոմանտիկ դպրոցով: 1930—1940-ական թթ. Հնդկաստանում ազգային-ազատագրական շարժումը նպաստեց ռեալիստական արձակի ուժեղացմանը

(Մ. Դեշպանդե, ծն. 1899, Ն. Փադկե, ծն. 1894, Վ. Քանդեկար, ծն. 1898), հեղափոխական-դեմոկրատական պոեզիայի առաջացմանը (Ա. Դեշպանդե, ծն. 1901, Վ. Շիրվադքար, ծն. 1912, Վ. Կանտ, ծն. 1913)։ Շատ գրողներ (Բ. Վարերկար, 1883—1965, Գ. Մադքուլկար, ծն. 1899, Վ. Հադապ, 1900—66) պատկերում են իրենց իրավունքների համար պայքարող բանվորների ու գյուղացիների։ Անկախ Հնդկաստանի Մ. գ-յանը բնորոշ են տարբեր ոճերի և ուղղությունների միահյուսումը, սոցիալական ու բարոյական խնդիրների նկատմամբ հետաքրքրությունը, հակաբուրժուական միտումները (արձակագիրներ Շ. Պենդսե, Վ. Մուդգուլքար, Ջ. Դալվի, բանաստեղծներ Շ. Մուքթիբոդի, Վ. Կարանդիքար, Վ. Բապատ, դրամատուրգներ Պ. Դեշպանդե, Վ. Տենդուլքար)։

*Գրկ.* История индийских литератур, пер. с англ., М., 1964; Ламшуков В. К., Маратхская литература, М., 1970.

**ՄԱՐԱԹԻ**, տես *Հնդկական լեզուներ*։

**ՄԱՐԱԹՈՆ** (Μαραθών), բնակավայր Հունաստանում, Ատտիկայի համանուն հարթավայրում՝ Աթենքից 40 *կմ* հյուսիս-արևելք։ Մ-ի մոտ մ. թ. ա. 490-ի սեպտ. 13-ին տեղի է ունեցել հույն-պարսկական պատերազմների (տես *Հույն-պարսկական պատերազմներ*) առաջին խոշոր ճակատամարտը։ Հուն. զորքը (շուրջ 10 հզ. հոպլիտներ՝ ծանրազեն հետևակը) Միլտիադեսի հրամանատարությամբ պարտության է մատնել պարսկ. զորքը (մոտ 20 հզ. նետաձիգներ ու հեծելազորայիններ)՝ Դատիսի գլխավորությամբ։ Պարսիկները դիմել են փախուստի՝ թողնելով 6400 սպանված, հույներից սպանվել է 192 մարդ։ Մ-ի մոտ հույների հաղթանակը բարոյական մեծ նշանակություն է ունեցել հույն-պարսկական պատերազմների ամբողջ ընթացքի համար։

**ՄԱՐԱԹՈՆՅԱՆ ՎԱԶՔ**, խճուղային վազք, թեթև աթլետիկական մրցությունների վազքի ծրագրի ամենաերկար տարածությունը (42 *կմ*, 195 *մ*)։ Անվանումը ստացել է *Մարաթոն* տեղանունից։ Մարաթոնյան ճակատամարտից հետո, ըստ ավանդության, հույն սուրհանդակ զինվորը վազքով, առանց դադարի, հասնում է Աթենք, ավետում հաղթանակի լուրը և անկենդան ընկնում։ Ֆրանսիացի բանասեր Մ. Բրեալի նախաձեռնությամբ Մ. վ. ընդգրկվեց I *օլիմպիական խաղերի* (Աթենք, 1896) ծրագրում։ Հաղթող դարձավ հույն Ս. Լուիսը։ Համաշխարհային բարձրագույն նվաճումը հավասար է 2 *ժ* 8 *ր* 33,6 *վրկ* (Դ. Քլեյտոն, Ավստրալիա, 1969)։ Մ. վ-ի ավանդական միջազգային մրցումներ են անցկացվում Բոստոնում (ԱՄՆ), Վինձորում (Մեծ Բրիտանիա), Կոշիցեում (ՉՍՍՀ), Էնսիեդեում (Նիդերլանդներ), Աթենքում (Հունաստան)։

**ՄԱՐԱԼ**, տես *Եղջերուներ*։

**ՄԱՐԱԼ ԴԱՂ**, հայ բռշանների գյուղ, Տրապիզոնի վիլայեթի Սինոպ գավառում։ 1915-ին ուներ մոտ 100 տուն բնակիչ, որոնք հիմնականում նստակյաց էին։ Զբաղվում էին անասնապահությամբ, հողագործությամբ։ Գյուղի բնակչությունը ոչնչացվել է 1915-ին, թուրք. կառավարության կազմակերպած ջարդերի ժամանակ։

*Բ. Թոռլաքյան*

**ՄԱՐԱԼՋԱՄԻ**, գյուղ Հայկական ՍՍՀ Մեղրու շրջանում, Մեղրի գետի ձախ ափին, շրջկենտրոնից 12 *կմ* հյուսիս-արևմուտք։ Կոլտնտեսությունն զբաղվում է անասնապահությամբ, այգեգործությամբ, կերային կուլտուրաների մշակությամբ։ Ունի



Մարալզամի

տարրական դպրոց, ակումբ, գրադարան, կինո, կապի բաժանմունք, կենցաղսպասարկման տաղավար, բուժկայան։ Հիմնադրվել է մոտ 1831-ին։

**ՄԱՐԱԼԻԿ**, քաղաքատիպ ավան (1962-ից), Հայկական ՍՍՀ Անիի շրջանի վարչական կենտրոնը։ Գտնվում է Արագած լեռան արմ. լանջին։ Մ-ով է անցնում Լենինական—Թալին—Երևան ավտոմայրուղին։ Երկաթուղով կապված է Պեմզաշենի հետ։ Կոլտնտեսությունն զբաղվում է հացահատիկի, կերային կուլտուրաների մշակությամբ և անասնապահությամբ։ Մ-ում են Լենինականի տեքստիլ միավորման բամբակամանվածքային ֆաբրիկան, լուսատեխնիկական էլեկտրասարքավորումների և Հիդրոհաղորդակ միավորման հիդրոսարքերի գործարանները, շինանյութերի և շինարարական իրերի կոմբինատը,



Մարալիկ

Անիի գլխավորող պանրագործարանը։ Մ-ում կան 2 միջնակարգ և երաժշտական յոթնամյա դպրոցներ, մարզադպրոց, պրոֆտեխնիկական ուսումնարան, 2 մսուր-մանկապարտեզ, կուլտուրայի տուն, գրադարան, կապի հանգույց, կինոսրահ, շրջանային հիվանդանոց (75 մահճակալով), պոլիկլինիկա, ամբուլատորիա, դեղատուն։ Մ-ում և շրջակայքում պահպանվել են գյուղատեղիներ, քարայրեր, խաչքարեր (VII—XI դդ.), եկեղեցի (1903), գերեզմանոցներ։ Բնակիչների նախնիները եկել են Բասենից, 1828-ին։

**ՄԱՐԱԼՅԱՆ ՍԱՐՈՎ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտակերտի շրջանում, Թարթառ գետի ձախ կողմում, շրջկենտրոնից մոտ 20 *կմ* հյուսիս-արևելք։ Միավորված է Լենինավանի խաղողագործական սովետական տնտեսության հետ։ Ունի տարրական դպրոց, գրադարան, ակումբ։

**ՄԱՐԱԿԱՅԲՈ** (Maracaibo), քաղաք և նավահանգիստ Վենեսուելայի հյուսիս-արևմուտքում, Սուլիա նահանգի վարչական կենտրոնը։ 690 հզ. բն. (1978)։ Երկրի տնտ. երկրորդ (Կարակասից հետո) և նավթային հիմնական շրջանի կենտրոնն է (տալիս է երկրում արդյունահանվող նավթի ավելի քան 3/4-ը)։ Կան սննդի, տեքստիլ, էլեկտրատեխնիկական, մետաղամշակման, ավտոհավաքման, թղթի, ցեմենտի, քիմ. արդյունաբերության ձեռնարկություններ։ Զարգանում է նավթաքիմիան։ Մ. աշխարհի նավթային կարևոր նավահանգիստներից է։ Ունի համալսարան։ Հիմնադրվել է 1571-ին։

**ՄԱՐԱԿԱՆՑ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Վանի վիլայեթի Մոկսի գավառում, Վանա լճից հարավ։ 1909-ին ուներ 11 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ։ Մ-ի հայերը 1915-ի հուլիսին, ռուս. զորքերի նահանջի ժամանակ, գաղթել և բնակություն են հաստատել Արևելյան Հայաստանում։

**ՄԱՐԱԿԵՇ**, քաղաք Մարոկկոյի հարավ-արևմուտքում, Մարակեշ նահանգի վարչական կենտրոնը։ 255 հզ. բն. (1978)։ Մարոկկոյի հվ. շրջանի տնտ. կենտրոնն է, երկաթուղային կայարան, ավտոճանապարհների հանգույց։ Մ-ում կա սննդհամի, քիմ., տեքստիլ, կաշի, փայտամշակման արդյունաբերություն, տնայնագործություն։ Գործում են Կարաուին համալսարանի ֆակուլտետը, թանգարաններ։ Պահպանվել են XI—XIX դդ. ճարտ. հուշարձաններ։ Հիմնադրվել է մոտ 1070-ին։

**ՄԱՐԱՂԱ**, Մ ե ր ա ղ ե, Մ ա ր ա կ ա, քաղաք Իրանի հյուսիս-արևմուտքում, Ուրմիա լճից հարավ-արևելք։ 65 հզ. բն. (1974)։ Երկաթուղային կայարան է, խաղողագործության, պտղաբուծության կենտրոն։ Բնակչությունը զբաղվում է չոր մրգերի, սեկի և գորգերի արտադրությամբ, փայտամշակմամբ։ Մ-ի մոտ արդյունահանվում է քարածուխ, մարմար։ Մ. 1221-ին ավերել են մոնղոլները, հետագայում ծաղկել, դարձել է Հուլաղու խանի աթոռանիստը։ XIII դ. 2-րդ կեսին *Նասրեդդին Թուսիի* ղեկավարությամբ կառուցվել է *Մարաղայի աստղադիտարանը*։ Մ-ում բնակվել են շատ հայեր։ 1318-ին հռոմեական կաթոլիկ եկեղեցին Մ-ում հաստատում է եպիսկոպոսական աթոռ, Արևելքում, հատկապես հայերի մեջ, կրոնական «միության» անվան տակ, ուժեղացնելու համար կաթոլիկական քարոզչությունը՝ հօգուտ Հռոմի եկեղեցու և եվրոպական պետությունների։ 1828—29-ին Մ-ից և շրջակա գյուղերից հազարավոր հայեր գաղթել և բնակություն են հաստատել Արևելյան Հայաստանում։

**ՄԱՐԱՂԱՅԻ ԱՍՏՂԱԴԻՏԱՐԱՆ**, հիմնադրվել է XIII դարի 2-րդ կեսին, Մարաղա քաղաքում (Իրանի հյուսիս-արևմուտքում), գործել է շուրջ հարյուր տարի։ Այդտեղ աշխատում էին տարբեր երկրո-

ների մի քանի տասնյակ գիտնականներ: Աստղադիտարանում տեղակայված էին դիտման ու չափման 10 խոշոր գործիքներ, որոնք աչքի էին ընկնում իրենց մեծությամբ, յուրատիպ կառուցվածքով և այդ ժամանակների համար չգերազանցված ճշգրտությամբ: Ուներ հարուստ գրադարան (շուրջ 40000 ձեռագիր): Հանրագիտակ և պետ. գործիչ *Նասրեդդին Թուսիի* ղեկավարությամբ այստեղ թարգմանվել են կամ մեկնաբանվել հունական աստղագիտության ու հարակից գիտություններին վերաբերող կարևորագույն երկեր (Էվկլիդեսի, Արքիմեդի, Պտղոմեոսի և ուրիշների), գրվել ինքնուրույն աշխատություններ՝ աստղագիտության ու երկրաչափության վերաբերյալ: Մ. ա-ում, դիտողական նյութի հիման վրա, կազմվել են մոլորակների շարժման ու աստղերի դիրքերի ցուցակներ: Հրատարակվել են 256 քաղաքների աշխարհագրական կոորդինատները և եռանկյունաչափական ֆունկցիաների վեցանիշ աղյուսակներ: Մարաղայում բավականին մեծ ճշգրտությամբ (1″) որոշվել է տարեկան *պրեցեսիայի* մեծությունը: *Բ. Թումանյան*

**ՄԱՐԱՂԱՅԻ ԲԱՐԲԱՌ**, հայերենի բարբառ: Ըստ ձևաբանական դասակարգման պատկանում է «ել» ճյուղին, ըստ բազմահատկանիշ վիճակագրական դասակարգման՝ արլ. խմբակցության Խոյ-Մարաղայի բարբառախմբին: Մ. բ-ով խոսել են Մարաղա քաղաքում և նրա շրջակայքում, այժմ խոսում են Ղարաբաղի ԻՄ-ի Մարաղա և Ագուլիսի շրջանի Ազա գյուղերում: Մ. բ-ի ձայնավորներն են՝ **ա, է, ի, ը, օ, ու, ա̈, օ̈, ու̈**, հարուստ է երկբարբառներով՝ **ը**$^{ի}$, **ը**$^{է}$, **ու**$^{ի}$, **ու**$^{է}$, **օ**$^{ու}$, **օ**$^{ի}$: Ուժեղ ընդգծված հատկանիշներից է ձայնավորների ներդաշնակությունը (ա̈խպո̈ւր, խա̈զզա̈ր): Մ. բ. ենթարկվում է բաղաձայնական համակարգի առաջին տեղաշարժին, գրաբարյան բառասկզբի ձայնեղ պայթականները վերածվում են խուլերի (բարձ> պառց, գետ> >կ$^{յ}$էտ, դուռն> տուռ, ձայն> ծէն, ջուր> >ճո̈ւր): Ունի քմային **գ**$^{յ}$, **կ**$^{յ}$, **ք**$^{յ}$ հնչյունները: Բաղաձայններից առաջ **կ>յ. ք** և **նք>hյ.** նույն դիրքում **ձ, ծ, ց** և **ջ, ճ, չ** կիսաշփականները համապատասխանաբար վերածվում են **ս, զ** և **շ, ժ** շփականների (ծածկել> տասկել, հեծնել>խէզնել, աչք>աշկ), **հ>խ** (հաց>խաց, հայր> >խէր): Բացակայում է **ֆ** հնչյունը. դրա փոխարեն գործածվում է **փ**: Գոյականների հոգնակին կազմվում է հետևյալ մասնիկներով՝ **իր**, որ ստանում են միավանկ բառերը, **նիր**՝ ձայնավորով վերջացող բազմավանկ բառերը, և **ք**$^{յ}$**իր**՝ բաղաձայնով վերջացող բազմավանկ բառերը (էծ-էծիր, կատու-կատունիր, էրագ-էրագք$^{յ}$իր): Մ. բ-ում ներգոյական հոլովը բացակայում է, բացառական հոլովն ստանում է **էն** վերջավորությունը, սեռական հոլովը հոդ չի ստանում: Բարբառը տարբերակում է իրի և անձի առումը: Ներկա ժամանակը կազմվում է անորոշ դերբայով և օժանդակ բայի խոնարհված ձևերով, անցյալ անկատարը՝ ներկայի ձևի վրա ավելացնելով **էր** մասնիկը՝ առանց դեմքի և թվի խոնարհման, վաղակատար դերբայը՝ **ը** մասնիկով: Պայմանական եղանակը կազմվում է ըղձականից՝ **կ**, իսկ հարկադրական եղանակը՝ **կ**$^{յ}$**պտա** կամ **գ**$^{յ}$**արահ**$^{յ}$ եղանակիչներով:

*Գրկ.* Ա ճ ա ռ յ ա ն Հ., Քննություն Մարաղայի բարբառի, Ե., 1926: Ղ ա ր ի բ յ ա ն Ա., Հայ բարբառագիտություն, Ե., 1953: Ջ ա հ ու կ յ ա ն Գ., Հայ բարբառագիտության ներածություն, Ե., 1972:

*Մ. Ասատրյան*

**ՄԱՐԱՆԴ**, քաղաք Մեծ Հայքի Վասպուրական նահանգի *Բաքրան* գավառում: Եղել է վերջինիս կենտրոնը: Ենթադրվում է, որ գավառը կոչվել է նաև Մ. անունով: Հայոց Արշակունիների անկումից (428) հետո Մ. եղել է Ատրպատականի կազմում: Այժմ՝ նույնանուն գյուղ Իրանում:

**ՄԱՐԱՆՅՈՆ** (Marañón), *Ամազոն* գետի վերին հոսանքի անվանումը:

**ՄԱՐԱՆՀԱՆ** (Maranhão), նահանգ Բրազիլիայի հյուսիս-արևելքում: Տարածությունը 324,6 հզ. *կմ*$^2$ է, բն.՝ 3470 հզ. (1977), վարչական կենտրոնը՝ Սան Լուիս: Գրավում է Բրազիլական սարահարթի հս. լանջերը, ծածկված սավաննաներով, ափամերձ դաշտավայրերում՝ խոնավ հասարակածային անտառներով: Տնտեսության հիմքը գյուղատնտեսությունն է, գլխավոր ճյուղը՝ հողագործությունը: Պլանտացիաներում աճեցնում են երկարաթել բամբակ, շաքարեղեգ, ինչպես նաև կակաո և սուրճ, գետահովիտներում՝ արմավենի: Սավաննաներում զբաղվում են անասնապահությամբ: Կա բամբակեղենի, շաքարի արդյունաբերություն: Նավահանգիստներն են Սան Լուիսը, Իկատուն:

**ՄԱՐԱՇ**, Գ ե ր մ ա ն ի կ ե, քաղաք Կիլիկյան Հայաստանում (այժմ՝ Թուրքիա), նախկին Հալեպի վիլայեթում (այժմ՝ Մարաշի վիլայեթի վարչական կենտրոնը), Ջահան գետի ձախ ափին: Ունի 105,2 հզ. բն. (1970): Երկաթուղային կայարան, ավտոխճուղիների հանգույց: Բրնձի մշակման ու առևտրի կենտրոն: Կան տեքստիլ, մետաղամշակման, սննդի (ալրաղաց, բրնձի մաքրման, յուղի) և գորգերի տնայնագործական արտադրության ձեռնարկություններ: Մ-ին տարբեր ժամանակներում տիրել են հռոմեացիները, բյուզանդացիները, արաբները ևն: Մանազկերտի ճակատամարտից հետո (1071) հայազգի զորավար Փիլարտոս Վարաժնունին ապստամբել է Բյուզանդիայի դեմ և ստեղծել մի ընդարձակ հայկ. իշխանություն, որի կենտրոն է դարձել Մ.: Քաղաքն ուներ ամֆիթատրոնի ձև, որի մեջտեղում, բլրակի վրա գտնվում էր բերդը: 1097-ին Մ-ին տիրացան խաչակիրները: XII դ. սկզբին քաղաքի կառավարիչ է նշանակվել հայազգի Թաթուլ իշխանը: Այնուհետև Մ. մտել է Եդեսիայի իշխանության մեջ: Լևոն Բ թագավորի (1187—1219) օրոք Մ. միացվել է Կիլիկիայի Հայկական թագավորությանը: XVI դարից անցել է օսմանյան թուրքերին: XVII դ. հիմնադրվել է այժմյան Մ. (հին Մ-ից մոտ 18 *կմ* արմ.): Դեռ վաղ ժամանակներից Մ. բնակեցված է եղել հայ հոծ բնակչությամբ: 1914-ին ուներ 70 հզ. խառը բնակիչ, որոնցից 40 հզ. հայեր, մնացածը՝ թուրքեր, արաբներ, հույներ ևն: Քաղաքի հայերն զբաղվում էին հիմնականում առևտրով, արհեստներով, նաև երկրագործությամբ և պտղաբուծությամբ: Մ-ում գոյություն ուներ հայկ. երեք համայնք՝ լուսավորչական (ուներ վեց եկեղեցի՝ Ս. Սարգիս, Ս. Գևորգ, Ս. Աստվածածին, Ս. Կարապետ, Ս. Ստեփանոս, Քառասուն Մանկունք), կաթոլիկական (ուներ մեկ եկեղեցի՝ Ս. Փրկիչ) և բողոքական (ուներ չորս եկեղեցի): Գործել են վարժարաններ (նշանավոր էին Ազգային կեդրոնականը և Հ. Մալճյանինը) և ճեմարան (տես *Մարաշի ճեմարան*): Մ-ում լույս են տեսել «Ջշմարտություն» (1919) և «Կոչնակ» (1964) պարբերականները: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է թուրք. կառավարության կազմակերպած ջարդերի հետևանքով: Երևանի արլ. կողմում՝ Նորքում հիմնադրվել է Նոր Մարաշ ավանը, որտեղ բնակություն են հաստատել ներգաղթած մարաշցիներ:

*Գրկ.* Ի ն ճ ի ճ յ ա ն Ղ., Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի, մաս 1, հ. 1, Վնտ., 1806: Ծ ո ց ի կ յ ա ն Ս. Մ., Արևմտահայ աշխարհ, Նյու Յորք, 1947:

**«ՄԱՐԱՇ»**, երկամսյա տեղեկատու պարբերաթերթ: *Մարաշի հայրենակցական միության* պաշտոնաթերթ: Լույս է տեսել 1954—66-ին, Բուենոս Այրեսում, հայերեն և իսպաներեն: Խմբագիր՝ Ս. Չալյան: Լուսաբանել է Հարավային Ամերիկայի երկրներում բնակություն հաստատած մարաշցիների մշակութային, կրթական և երիտասարդական կյանքը: Կոչ է արել հանգանակությամբ կրթական ֆոնդ ստեղծել Մերձավոր Արևելքի երկրներում ապրող հայ երիտասարդների համար: «Հայրենի աշխարհ» խորագրով ներկայացրել է ՀՍՍՀ մշակութային ու տնտ. կյանքի վերելքը, տպագրել հայրենիք ներգաղթած մարաշցիների նամակները, հրապարակել Մարաշի անցյալին ու ներկային վերաբերող հուշեր, ականատեսների նկարագրություններ, ուսումնասիրություններ:

*Գ. Գույումջյան*

**ՄԱՐԱՇԻ ԲԱՐԲԱՌ**, հայերենի բարբառ: Պատկանում է Կիլիկիայի կամ հվ-արմ. միջբարբառախմբին: Մեռած բարբառ է: Խոսվել է Մարաշում և շրջակա հայաբնակ գյուղերում: Ունի երկաստիճան խլազուրկ բաղաձայնական համակարգ (պ>բ, բ>բ,



Մարաշի համայնապատկերը

փ>փ): Ձայնավորներն են՝ **ա, ի, օ, ու, է, ը, ա̈, ու̈, օ̈**: Շեշտի տակ կատարվել են հետևյալ պատմական հնչյունափոխությունները. **ա**>**օ**, **է**՝ (հարս>հօրս, կարճ>>գէրչ) **ի**>**ա**, **է**՝(միս>մաս, գինի>գինէ՝), **ո**>**ու̈** (խոտ>խու̈տ, ոսպ>ու̈սպ), **ու**>**օ** (ջուր>ջօր, դու>դօն), **օ**>**օ̈**(օր>օ̈ր, օճ>>օ̈ց), **ե**>**ի**(վեց>վից, կարպետ>գարբիդ): Երկբարբառները պարզվել են՝ **այ**>**ա̈**, (փայտ>փա̈դ, երկայն>իրգ̈ա̈ն), **իւ**>**ա**, **ի** (ձիւն>ձան, ծանրութիւն>ձանրըթան, հարիւր>հէրիր), **ոյ**>**ի**, **ա**, **է** (քոյր>քիր, լոյս>լաս, ընկոյզ>ընգէզ): Բարբառում գործում է ձայնավորների ներդաշնակության օրենքը: Հոգնակերտներն են՝ **իր**, **նիր**, **դաք**, **ք**, **ստօնք**: Ունի չորս հոլովաձև՝ սեռական-տրականի հոլովակերտներն են՝ **ան** (<**ին**), **ին**,**'ուն**, **օն**(<**ան**), **ու̈չ** (<**ոչ**) և ներքին թեքման **օ** (<**աւ**), բացառականինը՝ **էն**, գործիականինը՝ **էվ(ի)**, հոգնակի սեռականինը՝ **ու**, **ց**: Անձնական դերանունների եզակի թվի և երկրորդ դեմքերի հոլովաձևերն են՝ **իս** (<**ես**)—**իմ-իէս-յաս-իմնէ-իմէվ**. **դօն** (<**դու**)—**քին-քէզ-ընկի-քիննէ-քիննէվ**: Ցուցական դերանուններն են՝ **աս**, **ադ**, **ան**, **ըսօ**, **ըդօ**, **ընօ**: Բայական ածանցներն են՝ **ն**, **ցըն**, (մըդնիլ, փացցընիլ): Դերբայները և նըրանց վերջավորություններն են. անորոշ՝ **իլ** (գարթիլ<կարդալ), վաղակատար՝ **իլ** (գարթացիլ), հարակատար՝ **օձ** (գարթաօձ), ենթակայական՝ **օղ** (գարթացօղ), ժխտման՝ **օ**, **ի**, **ա** (գարթօ, սիրի, հաքնա): Ներկա ժամանակը կազմվում է ձայնավորով սկսվող բայերի համար **գ**, բաղաձայնով սկսվողների համար՝ **գը**, **գի**, **գու** նախադաս մասնիկներով, որոնք համապատասխանաբար հանդես են գալիս ներդաշնակության օրենքի համաձայն (գուդիմ, գը հաքնիմ, գի սիրիմ, գու թու̈ղումմ): Բարբառն ունի շարունակականի ձև՝ **գօ** մասնիկով: Ապառնի ժամանակը կազմվում է **բիդե** (<պիտի) բառ-մասնիկով: Կա նաև անմիջական ապառնիի ձև, որն արտահայտվում է **ուզիլ** և համապատասխան բայի հարադրությամբ (զիզիմ սիրի):

Բայերի խոնարհված ձևերում վերջնավանկի ձայնավորները կանոնավորապես ենթարկվում են բարբառի հնչյունափոխական օրենքներին:

Գրկ. Մելիք Մ. Դավիթ-բեկ, Ձայնական ուսումնասիրություն Մարաշի բարբառին», «ՀԱ», 1896, №№ 2, 4, 8, 12: Աճառյան Հ., Հայոց լեզվի պատմություն, հ. 2, Ե., 1951: Ջահուկյան Գ. Բ., Հայ բարբառագիտության ներածություն, Ե., 1972:

*Դ. Կոստանդյան*

**ՄԱՐԱՇԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆ**: Մարաշցիներն իրենց առաջին հայրենակցական միությունը՝ «Մարաշի կրթասիրաց ընկերակցությունը» հիմնել են 1906-ին, Նյու Յորքում, Կոստան Մոմճյանի նախաձեռնությամբ, Մարաշի հայ երեխաների կրթության գործին օժանդակելու նպատակով: 1918-ին վերակազմվել է և կոչվել «Մարաշի նպաստամատույց ընկերություն», որը 1925-ին միավորվել է 1912-ին Բոստոնում ստեղծված «Մարաշի կրթասիրաց ընկերակցության» հետ, կազմելով Մ. հ. մ.: Միությունը մասնաճյուղեր ունի ԱՄՆ-ի հայաշատ քաղաքներում, Արգենտինայում, Բրազիլիայում, Ուրուգվայում, Հունաստանում, Ֆրանսիայում, Լիբանանում, Սիրիայում, Հորդանանում, Պաղեստինում: Ղեկավար մարմին ճանաչված է ԱՄՆ-ի Ուստր քաղաքում գործող կենտրոնական վարչությունը [նախագահն ու ընդհանուր քարտուղարն է բժիշկ Ե. Տ. Մկրտիչյանը (Մուկար)]: Միության պաշտոնաթերթն է «Գերմանիկ» հանդեսը, որը լույս է տեսնում Նյու Յորքում, 1930-ից; 1954—66-ին Բուենոս Այրեսում լույս է տեսել միության «*Մարաշ*» թերթը:

Ընդառաջելով Մ. հ. մ-յան 1949-ի խնդրանքին (նախաձեռնողը Արգենտինայի միությունն էր)՝ Սովետական Հայաստանի կառավարության որոշմամբ Երևանի արլ. բարձրադիր մասում հիմնադրվեց Նոր Մարաշ թաղամասը: 1969-ին հանդիսավորությամբ նշվեց Նոր Մարաշի հիմնադրության 20-ամյակը՝ արտասահմանյան պատվիրակների մասնակցությամբ: Մ. հ. մ. սերտ կապերի մեջ է Սովետական Հայաստանի հետ:

*Պ. Մարտիրոսյան*

**ՄԱՐԱՇԻ ՃԵՄԱՐԱՆ** (ակադեմիա), հիմնադրվել է 1891-ին, Թուրքիայի Մարաշ քաղաքում, միսիոներ Թոմաս Դեյվիդսըն Քրիստի նախաձեռնությամբ, ավետարանական երեք եկեղեցիների նյութական աջակցությամբ: Ճեմարանի նպատակն էր պատրաստել ուսանողներ Թուրքիո Կեդրոնական կոլեջի (Այնթապ) առաջին կարգի համար: Դասավանդվել են հայերեն, թուրք., անգլ., ընդհանուր և ազգային պատմություն, հանրահաշիվ, գիտական ուսմանց նախատարերք, երգ, երաժշտություն, ճարտասանություն, կրոն: Սովորում էին թոշակավոր և կիսաթոշակավոր սաներ: 1893—95-ին ճեմարանը տվել է 82 շրջանավարտ: Ուսումնառել են նշանավոր հայ մտավորականներ Ա. Հայկազյանը, Գ. Գալուստյանը, Հ. Քեշիշյանը, Ն. Զեյթունցյանը, դասավանդել են Ա. Շիրաճյանը, Լ. Ալճյանը, Հ. Չիլինկիրյանը, Ե. Պեհեսնիլյանը (Քասունի), Լ. Միլիտոնյանը, Ս. Սամվելյանը և ուրիշներ: 1910-ին Մարաշի ճեմարանը միացվել է 1880-ին հիմնված Ազգային կեդրոնական վարժարանին և վերանվանվել Միացյալ կեդրոնական վարժարան:

Գրկ. Գալուստյան Գ., Մարաշ կամ Գերմանիկ ու հերոս Զեյթուն, Նյու Յորք, 1934:

*Ա. Իգնատյան*

**ՄԱՐԱՋԱԽՏ** (միջին լատ. marescaleus, ֆրանս. maréchal անունից), բանակի սպառազինման և պարենավորման գծով սպարապետի տեղակալը Կիլիկյան Հայաստանում:

Արևմտահայերենում Մ. այժմ օգտագործվում է որպես *մարշալի* հոմանիշ:

**ՄԱՐԱՍՏԱՆ**, Մեդիա (հուն. Μηδία), հնագույն պետություն Իրանական բարձրավանդակի հյուսիս-արևմուտքում: Մ. առաջին անգամ հիշատակվում է մ. թ. ա. IX դ. 2-րդ կեսի ասորեստանյան արձանագրություններում: Մարերը զբաղվել են հողագործությամբ և անասնապահությամբ (առանձնապես՝ ձիաբուծությամբ), արհեստներով: Մ. թ. ա. մոտ IX դ. սկզբնավորվել են մարերի և Հայկական լեռնաշխարհի ցեղերի փոխհարաբերությունները՝ Ուրմիա լճի արլ. և հվ-արլ. շրջանում: Ասորեստանի (որը զավթել էր Մ-ի հողերի մի մասը) դեմ պայքարը, Ուրարտուի հետ շփումը որոշակի ազդեցություն են ունեցել մարերի ցեղային միությունների և առաջին պետ. կազմավորումների առաջացման վրա:

Ըստ Հերոդոտոսի (I, 97—98) Մ-ի թագավորությունը և նրա մայրաքաղաք *Եկբատանը* հիմնել է Դեոկես (Դեյոկես) թագավորը (մ. թ. ա. մոտ 727—675, այլ տվյալներով՝ 709—656), ըստ ասորեստանյան աղբյուրների Մ-ի թագավորությունը ստեղծվել է մ. թ. ա. VII դ. 70-ական թթ.: Մ. իր հզորության գագաթնակետին է հասել *Կիաքսար* (Կվաքսարես) թագավորի օրոք (մ. թ. ա. մոտ 625—585): Մ. թ. ա. 612-ին, Ասորեստանի մայրաքաղաք Նինվեի գրավման ժամանակ Կիաքսարին օգնել է *Պարույր Սկայորդին*, որին Կիաքսարը ճանաչել է Հայոց թագավոր: Մ-ընդհարվել է նաև Լիդիայի հետ: Ուրարտուի անկումից հետո, Հայկական լեռնաշխարհում կազմավորված Երվանդունիների հայկ. թագավորությունը ընդունել է Մ-ի գերիշխանությունը: Հայոց թագավորների կառավարմանն են հանձնվել Փոքր Ասիայի այսրհալիսյան մարական տիրույթները: Կիաքսարի արշավանքների հետևանքով Մ-ի սահմաններն արմ-ում հասել են մինչև Հալիս գետը, արլ-ում՝ Միջին Ասիա (հավանաբար, նաև այժմյան Աֆղանստանի տարածքը): Զավթումների ժամանակ մեծ քանակությամբ ռազմագերիների ձեռքբերումը, հին քաղաքակրթությունների հետ շփումը նպաստել են Մ-ում (հիմնականում՝ արմ-ում) ստրուկների աշխատանքի լայն կիրառմանը: Ստրուկներին օգտագործել են արքայական, ավագանու և տաճարային տնտեսություններում: Կիաքսարին հաջորդած որդին՝ Աստիագեսը (Աժդահակ, մ. թ. ա. մոտ 585—550), փորձել է թուլացնել մարական ավագանու ազդեցությունը, որով բարդացել է Մ-ի ներքին քաղ. իրավիճակը: Քսենոփոնի «Կյուրոպեդիա»-ի տվյալներով Աստիագեսի ժամանակ Հայաստանը Մ-ին վճարել է տարեկան 50 տաղանդ, տրամադրել 20 հզ-անոց հետևազոր և 4 հզ-անոց հեծելազոր: Օգտվելով Մ-ի և Բաբելոնի միջև ծագած պատերազմից (մ. թ. ա. VI դ. 1-ին կես)՝ Հայոց թագավոր Երվանդ Ա Սակավակյացը ապստամբել է Աստիագեսի դեմ, դադարել տուրք վճարելուց, զորք տրամադրելուց: Սակայն մարերին հաջողվել է վերականգնել իրենց գերիշխանությունը: Մ-ից ազատագրվելու նոր փորձ է կատարել Տիգրան Երվանդյանը՝ Երվանդ Ա Սակավակյացի որդին: Նա դաշնակցել է Աստիագեսի դեմ ապըստամբած Պարսք (Պերսիս, Պարսուա) և Անշան երկրների թագավոր *Կյուրոս* II Մեծին: Այս իրադարձություններն արտացոլվել են Մովսես Խորենացու «Հայոց պատմության» մեջ պահպանված (գիրք Ա, գլ. ԻԴ—Լ) ավանդազրույցում (տես «*Տիգրան և Աժդահակ*»): Կյուրոս II Մեծը տապալելով Աստիագեսին՝ գրավել է Մ., հիմնել *Աքեմենյան պետությունը*, որի




գերիշխանության տակ, ի թիվս այլ երկրների, ընկել են Մ. և Հայաստանը: Մարերը հաճախ ապստամբել են Աքեմենյանների դեմ. մասնավորապես Դարեհ I-ի օրոք (մ. թ. ա. 522—486) բռնկել է մարերի, հայերի և այլ ցեղերի ու ժողովուրդների միաժամանակյա ապստամբություն: Ապստամբության ճնշումից հետո, Դարեհ I Մ. և Հայաստանը թուլացնելու նպատակով նրանց տարածքների մի մասում ստեղծել է XVIII սատրապությունը:

Մ. թ. ա. IV դ. վերջին քառորդին նախկին Մ-ի հս-արմ. մասում մարերը ստեղծել են նոր պետություն Ատրոպատենեն կամ *Ատրպատականը*, որը հետագայում կոչվել է Փոքր Մ.: Հայ-մարական առնչություններն այնուհետև կապվում են Հայաստանի ու Ատրպատականի փոխհարաբերությունների հետ:

Մ. կարևոր տեղ է գրավում հին աշխարհի քաղ., տնտ. և մշակութային պատմության մեջ: Մ. այն երկրներից էր, ուր լայն տարածում էին գտել *զրադաշտականությունը* և նրա հետ կապված ուսմունքները: Ենթադրվում է, որ Փոքր Մ-ում է համակարգվել *«Ավեստան»*:

*Գրկ.* Հայ ժողովրդի պատմություն, հ. 1, Ե., 1971: Մանանդյան Հ., Երկ., հ.1, Ե., 1977: Дьяконов И. М., История Мидии..., М.—Л., 1956. *Գ. Տիրացյան*

**ՄԱՐԱՏ** (Marat) Ժան Պոլ (1743—1793), Ֆրանսիական մեծ հեղափոխության գործիչ, գիտնական, հրապարակախոս: Ծնվել է Շվեյցարիայում: 1759-ից հաստատվել է Ֆրանսիայում, ուսումնասիրել է բնական և ֆիզ. գիտությունները, կրել լուսավորիչներ Ժ. Ժ. Ռուսոյի և Շ. Մոնտեսքյոյի գաղափարական ազդեցությունը: 1765-ին տեղափոխվել է Մեծ Բրիտանիա, զբաղվել բնական գիտություններով և բժշկությամբ: 1775-ին Էդինբուրգի համալսարանը նրան շնորհել է բժշկության դոկտորի գիտ. աստիճան: 1775-ին Ամստերդամում լույս է տեսել Մ-ի «Մարդու մասին...» բնափիլիսոփայական երկը, որին բացասաբար վերաբերվեցին Դ. Դիդրոն և Վոլտերը, նրանում արտահայտված հակամատերիալիստական ուղղության համար: Մ-ի առաջին քաղ. երկը՝ «Ստրկության շղթաները» (անգլ.), լույս է տեսել 1774-ին, որտեղ հեղինակը քննարկել է հեղափոխության անխուսափելիության և հեղափոխական պայքարի հարցերը: Այդ առաջավոր գաղափարները նա զարգացրել է քաղաքական-իրավաբանական «Քրեական օրենսդրության նախագիծ» (1780) աշխատության մեջ: 1776-ից վերադարձել է Փարիզ, զբաղվել է բժշկությամբ և ֆիզիկայով: Հեղափոխությունը սկսվելուն պես նա թողել է գիտությունը և նվիրվել ապստամբ ժողովրդի գործին: 1789-ի սեպտեմբերից հրատարակել է «Ժողովրդի բարեկամ» թերթը, որի էջերում հետևողականորեն պաշտպանել է հեղափոխության զարգացման խնդիրները, մերկացրել նրա դավաճաններին (Ժ. Նեկկեր, Օ. Միրաբո, Մ. Լաֆայետ), ինչպես նաև *ժիրոնդիստների* քաղաքականությունը: Հալածվելով իշխանություններից՝ 1790-ից անցել է ընդհատակ:



Ժան Պոլ Մարատ

Հիմնական խնդիր ունենալով քաղ. հարցերը՝ Մ. մշակել է նաև հեղափոխության սոցիալական խնդիրները, հետևողականորեն պաշտպանելով ժողովրդի և հատկապես ունեզուրկ խավերի շահերը, որով ձեռք է բերել մեծ ժողովրդականություն: 1792-ին ընտրվել է *Կոնվենտում*: Հեղափոխական ուժերը համախմբելու նպատակով Մ. «Ժողովրդի բարեկամ» թերթը վերանվանել է «Ֆրանսիական հանրապետության լրագիր»՝ կոչ անելով մոռանալ կուսակցական տարաձայնությունները, միավորել բոլոր ուժերը հանուն հանրապետության փրկության: Ժիրոնդիստները չընդունեցին Մ-ի առաջարկները և 1793-ի ապրիլին Կոնվենտի որոշմամբ Մ-ին ձերբակալեցին (հակառակ նրա դեպուտատական անձեռնմխելիության) և հանձնեցին հեղափոխական տրիբունալին, որտեղ Մ. արդարացվեց և հաղթականորեն վերադարձավ Կոնվենտ: *Ռոբեսպիերի* հետ (երկուսով գլխավորում էին *յակոբինյաններին*) ղեկավարեց ընդդեմ ժիրոնդիստների 1793-ի մայիսի 31-ի—հունիսի 2-ի ժող. ապստամբության նախապատրաստությունը: Սակայն ծանր հիվանդությունը թույլ չտվեց Մ-ին ակտիվորեն մասնակցել Կոնվենտի գործունեությանը *յակոբինյան դիկտատուրայի* հաստատումից հետո: Բայց հիվանդ Մ. շարունակել է հրատարակել իր թերթը: Սպանվել է ժիրոնդիստների դրդմամբ՝ Շարլոտ Կորդեի ձեռքով: Մ-ի թաղումը վեր է ածվել քաղ. մեծ ցույցի:

*Գրկ.* Манфред А. З., Марат, М., 1962.

**ՄԱՐԲՈՒՐԳՅԱՆ ԴՊՐՈՑ**, տես *Նեոկանտականություն*:

**ՄԱՐԳԱԳԵՏԻՆՆԵՐ**, բիոցենոզ, որի բուսակացքը կազմված է առավելապես բազմամյա մեզոֆիլ (միջին խոնավությանը հարմարված) խոտաբույսերից, որոնք աճում են ամբողջ վեգետացիայի ընթացքում (առանց ամառվա ընդմիջման, որը հատուկ է տափաստանային բույսերին): Բնական Մ. առաջանում են բազմամյա մեզոֆիլ խոտաբույսերի համար նպաստավոր կլիմայական և հողային պայմաններ ունեցող վայրերում՝ երկարատև ողողվող հովիտներում, բարձրլեռնային գոտում, մերձարկտիկայի և մերձանտարկտիդայի ծովափնյա շրջաններում, տափաստանային ու կիսաանապատային գոտիների լիմաններում: Տարբերում են մայրցամաքային, ողողվող և լեռնային Մ.: Մայրցամաքային Մ. տեղադրված են հարթավայրերում (ողողվող հովիտներից դուրս) և լինում են անջրդի հովիտների ու ցածրավայրերի Մ.: Ողողվող Մ. տարածված են տունդրայից մինչև անապատներ (հատկապես անտառային և անտառատափաստանային գոտիներում): Ավելի բերքատու և բազմազան են, քան մայրցամաքային Մ.: Լեռնային Մ. տարածված են խոնավ, չափավոր կլիմա ունեցող շրջաններում (ՍՍՀՄ-ում՝ Կարպատներում, Կովկասում, Տյան Շանում, Ալթայում, Ուրալում), անտառի վերին սահմանից բարձր (ենթալպյան ու ալպյան Մ.) և անտառային գոտում, ոչնչացված անտառների տեղում (ետանտառային Մ.): Մ. չոր խոտի և արոտային լիարժեք կանաչ կերի աղբյուր են: Խոտակացքը բաղկացած է հացազգի և բակլազգի խոտաբույսերից, տարախոտերից, երբեմն՝ բոշխերից ու մամուռներից: Կերօգտագործման տեսակետից արժեքավոր են առաջին երկու խումբը:

1978-ին ՍՍՀՄ-ում Մ-ի տարածությունը կազմել է 370 մլն *հա*, որից խոտհարքներ՝ 53 մլն, արոտավայրեր՝ 317 մլն *հա*: ՀՍՍՀ-ում համապատասխանաբար՝ 985 հզ., 137 հզ. և 848 հզ. *հա*: ՀՍՍՀ-ում Մ-ները տարածված են հիմնականում Արագածի, Գեղամա լեռնաշղթայի, Կապուտջուղի և այլ լեռնազանգվածներին ու դրանց լանջերին (ծ. մ. 2200 *մ* և ավելի բարձրության վրա): ՀՍՍՀ-ում խոտհարքների մոտ 75%-ը գտնվում է ենթալպյան, ետանտառային մարգագետնատափաստանային, իսկ արոտների 90%-ը՝ ալպյան, ենթալպյան, լեռնատափաստանային, մարգագետնատափաստանային և ետանտառային գոտիներում: Մ-ի միջին բերքատվությունը խոտհարքներում 15—25 *ց/հա* է (չոր խոտ), արոտավայրերում՝ 10—15 *ց/հա*: Տես նաև *Մարգագետնաբուծություն*:

*Հ. Սմբատյան*

**ՄԱՐԳԱԳԵՏՆԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆ**, 1. գյուղատնտեսության ճյուղ (բուսաբուծության բաժին), զբաղվում է բնական և ցանովի խոտհարքներում ու արոտավայրերում խոտի, խոտալյուրի հումքի, կանաչ և այլ կերերի արտադրությամբ: 2. Գիտություն. մշակում է Մ-յան տեսական հիմունքները:

ՍՍՀՄ-ում Մ. կարևոր դեր ունի հանրային անասնապահության կերի կայուն բազայի ստեղծման գործում. խոտհարքներից և արոտավայրերից տարեկան ստացվում է բոլոր կերերի մոտ 1/3-ը, ՀՍՍՀ-ում՝ 1/2-ը: Ռուսաստանում որպես գիտություն ձևավորվել է XIX դ. վերջին և XX դ. սկզբին, զարգացել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո. 1917-ին Մոսկվայի մոտ կազմակերպվեց կերաբույսերի և կերհանդակների ուսումնասիրման կայան, որի հիման վրա 1922-ին՝ Մարգագետնաբուծության պետ. ինստ. (այժմ՝ Վ. Ռ. Վիլյամսի անվ. կերերի համամիութենական ԳՀԻ), իսկ հետագայում բնական բոլոր գոտիներում՝ ճյուղային և մասնագիտացված ԳՀԻ-ներ, փորձարարական կայաններ, հենակետեր են: ՍՍՀՄ-ում մշակվել են *մարգագետինների* մակերեսային, արմատական և ռացիոնալ օգտագործման, բարելավման ու արդյունավետության բարձրացման միջոցառումներ, 1956-ին Լենինի անվ. ՀամԳԳԱ-ում ստեղծվել է մարգագետնաբուծության, արոտային տնտեսության և կերային կուլտուրաների բաժանմունք, որը 1966-ից Մարգագետնաբանների եվրոպական ֆեդերացիայի անդամ է: Մ-յան վերաբերող գիտական աշխատանքները լուսաբանվում են «Կորմա» («Корма», 1972-ից) ամսագրում, Լենինի անվ. ՀամԳԳԱ, Կերերի համամիութենական ԳՀԻ-ի և գիտական այլ հաստատությունների աշխատություններում:

Գրկ. Сенокосы и пастбища, под ред. И. В. Ларина, М.—Л., 1969.

**ՄԱՐԳԱՀՈՎԻՏ**, գյուղ Հայկական ՍՍՀ Գուգարքի շրջանում, շրջկենտրոնից 19 *կմ* հարավ-արևելք: Մ-ով է անցնում Կիրովական—Դիլիջան խճուղին: Կաթնաանասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև կերային կուլտուրաների, կարտոֆիլի մշակությամբ, բանջարաբուծությամբ, պտղաբուծությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, 2 գրադարան, 2 մսուր-մանկապարտեզ, կինո, կապի բաժանմունք, հեռախոսակայան, կենցաղսպասարկման տաղավար, տեղամասային հիվանդանոց: Մ-ում գործում են Կիրովականի կաթի գործարանի պանրի արտադրամասը, կարի ֆաբրիկայի մասնաճյուղը, կառուցվում է Մարգահովիտ—Մեղրաձոր երկաթուղային թունելը (երկարությունը՝ 8,5 *կմ*): Գյուղում կա եկեղեցի (1872): Աղստև գետի ակունքին մոտ, Սարի-սոփ կոչվող բլրի մակերեսին գտնված նյութերը հավաստում են, որ Մ-ի մոտ եղել է վաղ բրոնզի դարաշրջանի բնակատեղի (մ. թ. ա. III հազարամյակ), իսկ ոսկու հանքերի տարածքում գտնված հնագիտական առարկաները հիմք են տալիս ենթադրելու, որ դրանք շահագործվել են դեռևս հնում: Մ-ում է ծնվել Սովետական Միության հերոս Ա. Անտինյանը:



Մարգահովիտ

**ՄԱՐԳԱՐ**, հայկական հեթանոսական տոմարի ամիսների 4-րդ օրվա անունը:

**ՄԱՐԳԱՐԱ**, գյուղ Հայկական ՍՍՀ Հոկտեմբերյանի շրջանում, Արաքս գետի ձախ ափին, շրջկենտրոնից 18 *կմ* հարավ-արևելք: Կոլտնտեսությունն զբաղվում է այգեգործությամբ, բանջարաբուծությամբ, խորդենագործությամբ և անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կապի բաժանմունք, կինո, մանկապարտեզ, տուրբազա, կենցաղսպասարկման տաղավար, հիվանդանոց: Մ. հայտնի է դեռևս VIII դարից, որպես Վարդանակերտ ավան, որտեղ 703-ին արաբների և հայերի միջև տեղի է ունեցել ճակատամարտ: Բնակիչների նախնիները եկել են Իգդիրից, Մուշից, 1810-ին:

**ՄԱՐԳԱՐԵ** (ծն. և մահ. թթ. անհտ.), XIII դարի հայ մանրանկարիչ: 1211-ին ծաղկել է «*Հաղպատի Ավետարանը*» (Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարան, ձեռ. № 6288): Բարձրարվեստ են հատկապես խորանները և «Քրիստոսի մուտքը Երուսաղեմ» տերունական նկարը: Դրանք տոգորված են կենսախնդությամբ և լավատեսությամբ, որին նպաստում են ոչ միայն պատկերված բուսական և կենդանական աշխարհի թավշերանգ ու ծաղկափթիթ գույները, այլև, ասես, ուղղակի իրականությունից վերցված պերսոնաժները: Այդ լավատեսությունն ու կենդանությունը որոշ գծերով շարունակվում են *Թորոս Տարոնացու* և *Գրիգոր Տաթևացու* ստեղծագործություններում և այդ ժամանակ ու հետագայում հատուկ էր արլ. արաբական-քրիստոնեական ու մահմեդական արվեստներին: Խորանները կազմված են սյուներին հանգչող ուղղանկյուն զորգաձև գլխազարդերով, որոնց ներքին դաշտում ընդելուզված են բուսազարդ համակենտրոն կամարներ: Քիվերի ու պատվանդանների ծայրերում նկարված են նռնենի, ձիթենի, արմավենի, ականթներ և այլ ծառեր ու թփեր, աքաղաղ, կաքավ, ձկնկուլ՝ կտցին ձուկ, արագիլ, սիրամարգ, ծառին փաթաթված եղջերավոր օձ, հուշկապարիկ ևն, որոնց մի մասը բացակայում է միջնադարյան «խորանների մեկնություններում», բայց գործածվում են հետագայում Կիլիկիայի և Գլաձորի մանրանկարչական դպրոցներում: Խորանների քիվերին և պատվանդաններին նկարված նռնենու տակ նվագող պատանին, մատուվակը, ձուկ բերող Շերանիկը եզակի են հայ մանրանկարչության մեջ: Մ-ի մանրանկարներում միաժամանակ հանդես են գալիս սիմվոլիկը և աշխարհիկը: Լուսամուտից նայող կինը, պատշգամբի աղջիկները և ծառի վրայից նրանց հետ սիրաբանող պատանին ու մյուսները թերևս վերարտադրում են Անիի նիստուկացը:

Պատկերազարդումը տես 304-րդ էջից հետո՝ ներդիրում:

Գրկ. Հովսեփյան Գ., Նյութեր և ուսումնասիրություններ հայ արվեստի և մշակույթի պատմության, պրակ 1, Երուսաղեմ, 1935: *Վ. Ղազարյան*

**ՄԱՐԳԱՐԵ** (ծն. և մահ. թթ. անհտ.), XIV դարի հայ մանրանկարիչ: Հավանաբար ապրել և ստեղծագործել է Սյունիքի գրչակենտրոններից մեկում: Հայտնի է Մ-ի նկարազարդած մեկ ձեռագիր (Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարան, № 2930, Ավետարան), որն ընդօրինակվել է 1315-ին: Նրա մանրանկարներին բնորոշ է արխաիզմը՝ թե ոճի, թե պատկերագրության առումներով, որ մասամբ առընչվում է տեղական և ասորա-ղպտական գեղանկարչության ավանդույթներին: Մ-ի ստեղծագործություններում չնայած ներկերի (հիմնականում՝ կարմիր, թավշյա կանաչ, դարչնաշագանակագույն) հյութեղ, հաստ շերտով դրվածքին, կատարումը հիշեցնում է ջրաներկերի թեթև տեխնիկան:

Գրկ. Հայկական մանրանկարչություն. Վասպուրական (ալբոմ), Ե., 1978: *Հ. Հակոբյան*

**ՄԱՐԳԱՐԵՆԵՐ**, Եհովա աստծո անունից ապագան գուշակողներ, ինչպես նաև կրոնաբարոյական քարոզիչներ ու հասարակական-քաղաքական հռետորներ հին Հրեաստանում: Մ. իբր օժտված էին ժողովրդին ուսուցանելու և գալիք աղետների մասին նրան զգուշացնելու «աստվածային առաքելությամբ»: Մ. թ. ա. IX դ. Եղիա մարգարեն և նրա աշակերտ Եղիշեն, իրենց շուրջ համախմբելով երիտասարդ Մ-ին («մարգարեների որդիներ»), «մարգարեից դպրոցներ» էին հիմնել երկրի տարբեր քաղաքներում (Գաբաա, Նավաթ, Բեթել, Գաղգաղա, Երիքով): Մ. թ. ա. VIII—VI դդ. մարգարեական շարժման նոր վերելքը պայմանավորվել է երկրում հասարակական-քաղաքական հակասությունների ծայրահեղ սրմամբ, ժողովրդի վիճակի ծանրացմամբ, արտաքին (Ասորեստանի, Նոր Բաբելոնիայի, Աքեմենյան Իրանի) միջամտության սաստկացմամբ: Մ. թ. ա. IX դ. նշանավոր Մ. էին Հովնանը և Հովելը, մ. թ. ա. VIII դ.՝ Ամովսը, Ովսեն, Եսայի I, Միքիան, Նավումը, մ. թ. ա. VII դ.՝ Սոփոնիան, Երեմիան, Ամբակումը, Աբդիոնը, մ. թ. ա. VI դ.՝ Եզեկիելը, Դանիելը, Եսայի II, Անգեն, Զաքարիան:

Մ. բողոքել են իշխողների, ունևորների դեմ գյուղացիներին հողազրկելու, ճնշելու և աշխատավորների հանդեպ կամայականություններ ցուցաբերելու համար, ընդդիմացել պատերազմներին, կանխագու-

շակել ապագայում հասարակական արդարության հաղթանակը: Քարոզելով միաստվածության գաղափարը՝ ի դեմս Եհովայի, նպաստել են թագավորական իշխանության կենտրոնացմանն ու հզորացմանը: Նրանք բարոյական սկզբունքը վեր են դասել պաշտամունքային մերկ ծեսերից ու կենդանիների զոհաբերությունից:

Մ-ի ուսմունքը, կանխագուշակումները փոխանցվել են բանավոր, հետագայում գրանցվել ժողովածուներում, առանձին գրքերում, որոնք վերջնական խմբագրման են ենթարկվել, ըստ երևույթին, մ. թ. ա. VI—V դդ.: Ըստ ծավալի, Մ-ի գրքերը պայմանականորեն բաժանվում են «մեծ» և «փոքր» մարգարեությունների: Մեզ են հասել 3 «մեծ» (Եսայի, Երեմիա, Եզեկիել) և 12 «փոքր» Մ-ի ժողովածուները, որոնք աչքի են ընկնում ձոխ բանաստեղծական լեզվով և կարևոր ներդրում են հին հրեական լեզվի ու գրականության զարգացման մեջ: Մ-ի գրական ստեղծագործությունը հետագայում մեծ ազդեցություն է ունեցել հուդայական աղանդավորական և քրիստոնեական գաղափարախոսության վրա: Մ-ի գաղափարներին դիմել են միջնադարյան քրիստոնեական աղանդավորները, գյուղացիական պատերազմների գաղափարախոսները, սոցիալիստ-ուտոպիստները:

*Գրկ.* Բառարան Սուրբ Գրոց, ԿՊ, 1881: Heaton E. W., The Old Testament Prophets, Harmondsworth, 1958; Eissfeldt O., The Prophetic literature, տես «The Old Testament and Modern Study», Oxf., [1961]; Fohrer G., Geschichte den israelitischen Religion, B., [1968].

**ՄԱՐԳԱՐԻՆ** (ֆրանս. margarine), սննդանյութ, ճարպերի ու կենդանական ճարպերի, կաթի, համեմունքների և այլ նյութերի խառնուրդ: Սննդարարությամբ, համով, քիմ. բաղադրությամբ և ֆիզիկական հատկություններով նման է *կարագին*: Մ. օրգանիզմում յուրացվում է 94—97,6%-ով, կարագը՝ 93—98,5%-ով: Տարբերում են կաթնային, խոհարարական և փոշենման Մ-ներ: Կաթնային Մ. ճարպի էմուլսիան է կաթում, որն օգտագործվում է անմիջականորեն և խոհարարական նպատակներով: Խոհարարական Մ. բուսական ճեթերի և կենդանական ճարպերի խառնուրդ է, օգտագործվում է սննդարդյունաբերության մեջ և խոհարարական գործում: Փոշենման Մ. օգտագործվում է խտացված սննդի պատրաստման համար: Արևմտյան Եվրոպայում Մ-ի արտադրությունն սկսվել է 1869-ին, ՍՍՀՄ-ում՝ 1927-ին (1977-ին արտադրվել է 1,2 մլն *տ* Մ.): Մ-ի արտադրության հիմնական հումքը բուսական ճեթերը (օգտագործվում են առանց հիդրոգենացման կամ հիդրոգենացումից հետո) և կենդանական ճարպերն (տավարի, ոչխարի, խոզի, ոսկրի) են: Մ-ի արտադրության համար ճարպերը նախ ռաֆինացնում և հոտազերծում են, ապա պատրաստում ջրաճարպային էմուլսիա: Կաթը մերում են կաթնաթթվային մանրէների օգնությամբ: Որպես համեմունք ավելացնում են կերակրի աղ (0,2—0,7%), շաքար, առանձին տեսակներին՝ կակաո, սուրճ, վանիլին են: Բարձրարժեք Մ-ին ավելացվում է նաև կարագ, բնական սննդային ներկեր, վիտամիններ, կաթնասեր են: ՀՍՍՀ-ում Մ. արտադրվում է Երևանի ճեթ-օճառի կոմբինատում:

**ՄԱՐԳԱՐԻՏ**, որոշ փափկամորթների մարմնում զարգացող գնդաձև կամ անկանոն գոյացում: Մ. կազմված է նույն նյութից, ինչ որ խեցին, հիմնականում ածխաթթվային կալցիումից: Առաջանում է խեցու մեջ կողմնակի իր (ավազահատիկ են) ընկնելու դեպքում, երբ նրա շուրջը կուտակվում է սադափը: Գույնը՝ սպիտակ, վարդագույն կամ դեղնավուն, երբեմն՝ սև: Ունի մանրադիտակայինից մինչև աղավնու ձվի չափեր: Խոշոր, կանոնավոր Մ. գնահատվում է խիստ թանկ: Համարում են, որ ամենախոշոր՝ 34 կարատանոց մարգարտահատը պատկանել է Իսպանիայի թագավոր Ֆիլիպ II-ին: Մ. մեծ մասամբ արդյունահանում են գաղտակորներից, որոնց խեցիներն օժտված են գեղեցիկ սադափով: Ծովային Մ. արդյունահանվում է Կարմիր ծովում, Պարսից ծոցում, Շրի Լանկայի, Ավստրալիայի, Ճապոնիայի, Վենեսուելայի ափերին: XX դ. աճեցվում է արհեստական Մ. (հիմնականում Ճապոնիայում): Կիրառվում է ոսկերչական գործում որպես թանկարժեք քար:

**ՄԱՐԳԱՐԻՏ ՆԱՎԱՐԱՑԻ** (Marguerite de Navarre) (1492—1579), Նավարայի թագուհի, գրող: Համակրել է չափավոր *Ռեֆորմացիային*, պաշտպանության տակ է առել նրա կողմնակիցներին: Մ. Ն-ու շուրջ խմբված էին ֆրանս. ականավոր հումանիստներ (Մարոն, Դեպերյեն, Դոլեն, Ռաբլեն): Առավել հայտնի ստեղծագործությունը՝ «Հեպտամերոնը» (1559, գրված է Բոկաչչոյի ազդեցությամբ), պատկերում է XVI դ. կեսի ֆրանս. ազնվականության բարքերն ու ապրելակերպը:

**ՄԱՐԳԱՐՅԱՆ** Ալեքսանդր Սիմոնի [ծն. 15.3.1924, գ. Քարաշեն (ՀՍՍՀ Գորիսի շրջանում)], հայ սովետական լեզվաբան: Բանասիրական գիտ. դ-ր (1967), պրոֆեսոր (1969): ՍՄԿԿ անդամ 1945-ից: Ավարտել է Երևանի համալսարանի բանասիրական ֆակուլտետը (1949), որտեղ և դասախոսում է 1950-ից: Զբաղվում է հայոց լեզվի քերականության և պատմության, հայերենի բառագիտության, բառարանագրության, հայ բարբառագիտության հարցերի ուսումնասիրությամբ: Հրատարակել է «Արդի հայերենի կապերը» (1955), «Մ. Նալբանդյանի լեզվագիտական գործունեությունը» (1957), «Խ. Աբովյանը և աշխարհաբարը» (1958), «Հայերենի հարադիր բայերը» (1966), «Գորիսի բարբառը» (1975) աշխատությունները: Կազմել է Ղազար Փարպեցու «Հայոց պատմության» համաբարբառը (3 գիրք):

**ՄԱՐԳԱՐՅԱՆ** Աստղիկ Եփրեմի [28(15).8. 1906, գ. Մալիշկա (այժմ՝ ՀՍՍՀ Եղեգնաձորի շրջանում)], հայ սովետական պտղաբույծ: Կենսբ. գիտ. դ-ր (1965), պրոֆեսոր (1962): ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1967): ՍՄԿԿ անդամ 1944-ից: Ավարտել է Սուխումի մերձարևադարձային կուլտուրաների համամիութենական ինստ-ը (1934): 1938-ից Հայկ. գյուղատնտ. ինստ-ի պտղաբանջրաբուծության ամբիոնի վարիչ: Գիտ. աշխատանքները վերաբերում են Հայաստանում պտղաբուծության զարգացման, սորտաշրջանացման և ագրոտեխնիկայի հարցերին: Ուսումնասիրել է ՀՍՍՀ խնձորենու ձևագոյացման կենտրոնները, հեռավոր հիբրիդացման եղանակով նոր սորտերի ստացումը, նկարագրել է խնձորենու տեսակային և սորտային կազմի կենսբ. առանձնահատկությունները, հայտնաբերել դրա տեղական 60 սորտ, որոնցից 4-ը (Ղափար, Չխչխկան, Սյունիքախնձոր, Կարմրկենի) ներդրել է ՀՍՍՀ խմ-արդ. և հս-արդ. շրջաններում: Մշակել է ՀՍՍՀ լեռնային և նախալեռնային շրջաններում պտղատու այգիների հիմնադրման և մշակության ագրոմիջոցառումներ:

*Երկ.* Հայաստանի վայրի պտուղները, Ե., 1959 (հեղինակակից Շահինյան Հ. Ն.): Տեղական ծագում ունեցող խնձորենու տեսակային և սորտային կազմը Հայկական ՍՍՌ-ում, Ե., 1960: Պտղաբուծություն, Ե., 1976 (հեղինակակից Շահինյան Հ. Ն.):

**ՄԱՐԳԱՐՅԱՆ** Արշալույս Հակոբի (ծն. 18.4.1914, Թիֆլիս), հայ սովետական բանաստեղծուհի: Ավարտել է Երևանի համալսարանի բանասիրական ֆակուլտետը (1936): Առաջին գիրքը՝ «Ձնծաղիկներ» խորագրով, լույս է տեսել 1947-ին: Հրատարակել է «Գարնանային վտակներ» (1954), «Հայրենի հովիտ» (1958), «Հեռաստաններ» (1962), «Երբ սիրում ես» (1970), «Դու ինձ սպասում էիր» (1975), «Ինձ հետ էիր դու» (1979) և այլ ժողովածուներ: Գրել է նաև մանուկների համար՝ «Թթենու տակ» (1954), «Մանկապարտեզ № 1» (1972):

**ՄԱՐԳԱՐՅԱՆ** Բենիամին Եղիշեի [ծն. 29.11(12.12). 1913, Շուլավեր (այժմ՝ Շահումյան, Վրաց. ՍՍՀ Մառնեուլի շրջան)], հայ սովետական աստղագետ, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1971): ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1961): ՍՍՀՄ ԳԱ աստղագիտական խորհրդի անդամ (1964), *Միջազգային աստղագիտական միության* «Գալակտիկաներ» հանձնաժողովի պրեզիդենտ (1976—79): ՍՄԿԿ անդամ 1950-ից: Ավարտել է Երևանի համալսարանի ֆիզմաթ


Բ. Ե. Մարգարյան

ֆակուլտետը (1938): Աշխատում է Բյուրականի աստղադիտարանում. ավագ գիտաշխատող (1943—51), դիրեկտորի տեղակալ (1953—56), գալակտիկաների ուսումնասիրության բաժնի վարիչ (1957-ից): 1943—1950-ին աստղագիտություն է դասավանդել Երևանի համալսարանում: Գիտ. աշխատությունները վերաբերում են աստղային ու արտագալակտիկ աստղագիտության պրոբլեմներին: Մասնակցել է աստղերի բաշխման մեջ դիտվող *ֆլուկտուացիաների տեսության* մշակմանը՝ հաշվի առնելով միջաստղա-

յին կլանումը: Դիտողական տվյալների հիման վրա հաստատել է, որ *աստղասփյուռները* լայնանում են: Մշակել է հատուկ մեթոդ, որի հիման վրա, 1965-ից Բյուրականի աստղադիտարանում սկսել է Երկնքի սպեկտրալ շրջահայությունը: Հայտնաբերել է հատուկ դասի օբյեկտներ, որոնք կոչվում են իր անունով (տես *Մարգարյանի գալակտիկաներ*):

Մ. ՍՍՀՄ պետ. մրցանակի դափնեկիր է (1950):

*Երկ.* Флюктуации в видимом распределении звезд и космическое поглощение, «Բյուրականի աստղադիտարանի հաղորդումներ», պրակ 1, 1946: Атлас звездных скоплений различных типов, М., 1953; Галактики с ультрафиолетовым континуумом, Астрофизика, 3, 55, 1967; On the Nature of Galaxies with UV Continuum Having Broad Emission Lines «Astronomy and Astrophisics», 58, 139, 1977.

*Ջ. Սահակյան*

**ՄԱՐԳԱՐՅԱՆ** Լևոն Պարթևի (ծն. 6.2. 1923, Երևան), հայ սովետական բժիշկ, մանկաբարձ-գինեկոլոգ: Բժշկ. գիտ. դ-ր (1976), պրոֆեսոր (1977): Պ. *Մարգարյանի* որդին է: Ավարտել է Երևանի բժշկ. ինստ-ը (1946): 1952-ից աշխատում է նույն ինստ-ի մանկաբարձության և գինեկոլոգիայի ամբիոնում: Գիտական աշխատանքները հիմնականում վերաբերում են հղիության ֆիզիոլոգիայի և ախտաբանության, Հայաստանի արդ. ձեռնարկություններում աշխատող կանանց աշխատանքի հիգիենայի և պրոֆեսիոնալ ախտաբանության հարցերին:

Ուսումնասիրում է նաև ուղեղի բնի տարբեր բաժինների ազդեցությունը սեռական ֆունկցիաների և ռեպրոդուկտիվ գործունեության ձևավորման վրա:

**ՄԱՐԳԱՐՅԱՆ** Հենրիկ Ռուբենի (ծն. 17.9. 1925, Լենինական), հայ սովետական կինոռեժիսոր: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1967): ՍՄԿԿ անդամ 1951-ից: Ավարտել է Երևանի գեղարվեստա-թատերական ինստ-ը (1951): 1955-ից աշխատում է «Հայֆիլմ» ստուդիայում: Ստեղծել է «Նվագախմբի տղաները» (1960, Հ. Մալյանի հետ), «Տերտերին ուխտը» (1966, «Մայր ժակը և ուրիշները» կինոալմանախում), «Կարծր ապար»(1975, Ա. Մկրտչյանի հետ), «Հեղկոմի նախագահը» (1978, ըստ Ս. Զորյանի), «Երկնագույն առյուծ» (1979) գեղարվեստական ֆիլմերը, ինչպես և փաստագրական ժապավեններ: 1972-ից Հայաստանի հեռուստատեսային ստուդիայում իրականացնում է հեռուստատեսային բեմադրություններ:

*Է. Մանուկյան*

**ՄԱՐԳԱՐՅԱՆ** Հովհաննես Սարգսի [13(26).1.1901, գ. Քաղաքիկ (այժմ՝ Նախիջևանի ԻՍՍՀ Օրդուբադի շրջանում)— 26.12.1963, Երևան], հայ սովետական ճարտարապետ, ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1961): ՍՍՀՄ շինարարության և ճարտ-յան ակադեմիայի իսկական անդամ (1956): ՍՄԿԿ անդամ 1944-ից: Հայաստանի ճարտ-ների միության վարչության նախագահ (1953—62): Ավարտել է Երևանի համալսարանի տեխ. ֆակուլտետի ճարտ-յան բաժինը (1928): Եղել է Հայաստանի պրոլետարական ճարտ. ընկերության հիմնադիր-անդամներից (1929—32), «Հայպետնախագիծ» կազմակերպության գլխավոր ճարտ. (1939—41),


Հ. Ս. Մարգարյան

Հայկ. ՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր ճարտ. վարչության պետ (1944—1950), հանրապետության նախագծային ինստ-ի (այժմ «Հայպետնախագիծ») ճարտ. արվեստանոցի ղեկավար (1951—58), «Երևաննախագիծ» ինստ-ի գլխավոր ճարտ. (1958—63): Մ-ի նախագծերով Երևանում կառուցվել են կարի առաջին (1931), ծխախոտի (1933) ֆաբրիկաները, կենտրոնական հանրախանութը (1932—1937, ճարտ-ներ Մ. Մազմանյանի, Գ. Քոչարի և Ա. Աիարոնյանի հետ), «Հայէներգոյի» վարչության շենքը (1938), կոնյակի գործարանի համալիրը (1952), ռադիոյի տունը (1954), Գրքի պալատի համալիրը (1960, ճարտ-ներ Մ. Մազմանյանի և Ս. Ներսիսյանի հետ), ճոպանուղու կայարանը (1962, ճարտ. Բ. Արզումանյանի


Երևանի ռադիոյի տունը (1954, ճարտ. Հ. Մ ա ր գ ա ր յ ա ն)

հետ), Կիրովականում՝ Կիրովի հրապարակի համալիրի բնակելի տները, Քաղսովետի և հյուրանոցի շենքերը (1955—60, ճարտ. Բ. Արզումանյանի հետ), Արզնու առողջարանի լողանքների մասնաշենքերը (1950, ճարտ. Ն. Բաժբեուկի հետ):

Մ-ի աշխատանքներին բնորոշ են ֆունկցիոնալ հստակությունը, արտահայտչականությունն ու պարզությունը, ինչպես և ազգային ճարտ. ավանդույթների ստեղծագործաբար օգտագործումը: *Ա. Կանայան*

**ՄԱՐԳԱՐՅԱՆ** Հրաչյա Խաչատուրի [26.11. 1912, գ. Փոքր Ղարաքիլիսա (այժմ՝ Ազատան, ՀՍՍՀ Ախուրյանի շրջանում) —23.11. 1967, Երևան], սովետական կուսակցական և պետական աշխատող: ՍՄԿԿ անդամ 1931-ից: Ավարտել է ՍՄԿԿ ԿԿ-ին առընթեր կուսակցական կազմակերպիչների բարձրագույն դպրոցը (1946): Աշխատել է Լենինականի տեքստիլ կոմբինատում և շրջանային թերթերի խմբագրություններում, 1937—39-ին և 1941—1943-ին՝ ՀԿԿ ԿԿ ապարատում: 1939—1941-ին «Խորհրդային Հայաստան» թերթի խմբագիրն էր, 1943-ին ընտրվել է ՀԿԿ ԿԿ քարտուղար: 1946—51-ին աշխատել է ՍՄԿԿ ԿԿ ապարատում՝ որպես տեսուչ, ապա՝ սեկտորի վարիչ: 1952-ին նշանակվել է «Սովետական Հայաստան» թերթի խմբագիր: 1953-ին ընտրվել է ՀԿԿ ԿԿ երկրորդ քարտուղար: 1959-ից ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրն էր, 1964-ից՝ ՀՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության նախագահի տեղակալը: Մ. եղել է ՀԿԿ ԿԿ (1943—45, 1952—67), ՀՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության անդամ (1965—67), ՍՍՀՄ IV—V և ՀՍՍՀ IV—VII գումարումների Գերագույն սովետի դեպուտատ:

Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

**ՄԱՐԳԱՐՅԱՆ** Մարգար Ավետիսի (1894, Վաղարշապատ — 20.11.1941, Երևան), հայ դուդուկահար: Նվագել է արևելյան գործիքների անսամբլում, Վարդան Բունու ղեկավարած նվագախմբում, 1926-ից՝ Հայաստանի ռադիոյի ժող. գործիքների անսամբլում: Ունեցել է հարուստ երկացանկ՝ պարեղանակներ, հայկ. ժող. ու գուսանական երգերի գործիքային փոխադրումներ, մուղամներ: Նրա կատարմանը բնորոշ էր հուզական հագեցվածությունը և ազգային-ժողովրդական ցայտուն երանգավորումը: 1939-ին մասնակցել է Մոսկվայում կայացած հայկ. արվեստի տասնօրյակին: Ժող. գործիքների երաժիշտ-կատարողների համամիութենական ստուգատեսում արժանացել է երրորդ մրցանակի: Մ-ի կատարումով թողարկվել են ձայնապնակներ, գրառվել կինոֆիլմերի երաժշտություն («Պեպո», «Զանգեզուր», «Սևանի ձկնորսները»):

Զբաղվել է նաև գործիքի կատարելագործմամբ, ստեղծել է դուդուկի «ind» տարատեսակը: *Հ. Էլոյան*

**ՄԱՐԳԱՐՅԱՆ** Մարո Եղիշեի [ծն. 22.12. 1915, Շուլավեր (այժմ՝ Շահումյան, ՎՍՍՀ Մառնեուլի շրջանում)], հայ սովետական բանաստեղծուհի:Միջնակարգ կրթությունն ստացել է ծննդավայրում: 1938-ին ավարտել է Երևանի համալսարանի բանասիրական ֆակուլտետը: 1967-ից աշխատում է սփյուռքահայության հետ մշակութային կապի կոմիտեում: Բանաստեղծությունների առաջին ժողովածուն, «Մտերմություն» խորագրով, տպագրվել է 1940-ին:


Մ. Ե. Մարգարյան

Այնուհետև լույս են տեսել նրա «Բանաստեղծություններ» (1945), «Մոր ձայնը» (1950), «Փշատենի» (1954), «Լիրիկական լուսաբաց» (1957), «Լիրիկա» (1962), «Ձընհալից հետո» (1965), «Լցված լռություն» (1972), «Օրերի խորքից» (1975) ժողովածուները: Մ-ի բանաստեղծությունները հագեցած են նուրբ քնարականությամբ ու հուզականությամբ: Դրանք թարգմանվել են ՍՍՀՄ ժողովուրդների լեզուներով,



Պ. Հ. Մարգարյան

ինչպես նաև անգլ., ֆրանս., ռում., բուլղ., չեխ., սերբ., լեհ.: Մ. թարգմանություններ է կատարել Մ. Պետրովիխից, Լ. Մարտինովից, Դ. Սամոյլովից, Ա. Ախմատովայից և ուրիշներից:

**ՄԱՐԳԱՐՅԱՆ** Շավարշ Սեդրակի [ծն. 16.6. 1930, գ. Սևքար (ՀՍՍՀ Իջևանի շրջան)], հայ սովետական տնտեսագետ: Տնտ. գիտ. դ-ր (1976), պրոֆեսոր (1977): ՍՄԿԿ անդամ 1951-ից: 1955-ին ավարտել է Երևանի համալսարանի տնտեսագիտության ֆակուլտետը: 1963—74-ին՝ ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստ-ի քաղաքատնտեսության բաժնի, 1974—79-ին՝ Երևանի Կ. Մարքսի անվ. պոլիտեխնիկական ինստ-ի քաղաքատնտեսության ամբիոնի վարիչ: 1979-ից Երևանի ժող. տնտեսության ինստ-ի ռեկտորն է: Գիտ. աշխատությունները վերաբերում են սոցիալիստական վերարտադրության հարցերին, ՀՍՍՀ միջճյուղային կապերի ուսումնասիրությանը:

*Երկ.* Հայկական ՍՍՌ մեքենաշինության մասնագիտացումն ու կոոպերացումը, Ե., 1961: Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության միջճյուղային կապերը, Ե., 1970: Զարգացած սոցիալիզմի ընդլայնված վերարտադրության բնորոշ գծերը, Ե., 1979:

**ՄԱՐԳԱՐՅԱՆ** Պարթև Համբարձումի [20.9. 1898, գ. Էվջիլար (այժմ՝ Արազափ, ՀՍՍՀ Հոկտեմբերյանի շրջանում)—16.3.1980, Երևան], հայ սովետական մանկաբարձ-գինեկոլոգ: Բժշկ. գիտ. դ-ր (1952), պրոֆեսոր (1953), գիտ. վաստ. գործիչ (1960): ՍՄԿԿ անդամ 1941-ից: 1927-ին ավարտել է Երևանի համալսարանի բժշկ. ֆակուլտետը: 1929—50-ին եղել է բժշկ. ինստ-ի մանկաբարձության և գինեկոլոգիայի ամբիոնի ասիստենտ, ապա՝ դոցենտ: 1937-ին Երևանում կազմակերպել է և ղեկավարել (մինչև 1950-ը) քաղաքային ծննդատունը, միաժամանակ եղել է բժշկ. ինստ-ի բուժական ֆակուլտետի դեկան (1939—1943), ՀՍՍՀ առողջկոմի առաջին տեղակալ (1943—1945): 1949—73-ին մանկաբարձության և գինեկոլոգիայի ԳՀԻ-ի դիրեկտոր (1973-ից՝ գիտական խորհրդատու), միաժամանակ՝ 1954-ից բժշկ. ինստ-ի սանհիգիենային, մանկաբուժության (1954—1963) և բժիշկների կատարելագործման (1958—1962) ֆակուլտետների մանկաբարձության և գինեկոլոգիայի ամբիոնի վարիչ: Մ-ի գիտական աշխատանքները հիմնականում վերաբերում են հղիության և մալարիայի, սեռական օրգանների չարորակ նորագոյացությունների, մեռածնության, մայրական և մանկական մահացության, ՀՍՍՀ արդ. ձեռնարկություններում աշխատող կանանց աշխատանքի հիգիենայի և պրոֆեսիոնալ ախտաբանության ու ՀՍՍՀ բնակչության մանկաբարձա-գինեկոլոգիական օգնության կազմակերպման հարցերին: Հեղինակ է «Մանկաբարձություն» (1960) և «Գինեկոլոգիայի դասագիրք» (1966) ձեռնարկների: Մ. եղել է Հայաստանի մանկաբարձ-գինեկոլոգների գիտական ընկերության վարչության նախագահ, ՀՍՍՀ առողջապահության մինիստրության գլխավոր մանկաբարձ-գինեկոլոգը, ծննդօգնության և գինեկոլոգիական օգնության խորհրդի նախագահ, ՍՍՀՄ և ՌՍՖՍՀ առողջապահության մինիստրության ծննդօգնության և գինեկոլոգիական օգնության խորհրդի անդամ: Պարգևատրվել է Լենինի շքանշանով:

**ՄԱՐԳԱՐՅԱՆԻ ԳԱԼԱԿՏԻԿԱՆԵՐ**, սպեկտրի ուլտրամանուշակագույն տիրույթում ճառագայթման ավելցուկ ունեցող *գալակտիկաներ*: Հայտնաբերել է Բ. Ե. *Մարգարյանը*՝ Բյուրականի աստղադիտարանի մեկ մետր տրամագիծ ունեցող *Շմիդտի աստղադիտակով* ստացված սպեկտրների միջոցով: Մ. գ-ի մեծ մասի սպեկտրներում դիտվում են բարձր գրգռման առաքման գծեր (ջրածնի, թթվածնի, ազոտի, ծծմբի ևն): Դրանք վկայում են, որ այս գալակտիկաների կորիզներում գոյություն ունեն զգալի քանակությամբ գազային զանգվածներ: Մ. գ-ում հանդիպում են հաբլյան դասակարգման բոլոր դասերը, սակայն այդ գալակտիկաները, մեծ մասամբ, ունեն կառուցվածքային այս կամ այն պեկուլյարությունը: Մ. գ-ում շատ են բարձր մակերևութային պայծառության կոմպակտ օբյեկտները: Ի տարբերություն այնպիսի գալակտիկաների, որոնց կապույտ գույնը պայմանավորված է վաղ տիպի աստղերի առկայությամբ (օրինակ, I տիպի անկանոն գալակտիկաների), Մ. գ-ի մեծ մասի ճառագայթումն ունի ոչ ջերմային բնույթ, այսինքն՝ այդ ճառագայթումը պայմանավորված չէ սոսկ աստղերով: Մ. գ. ենթարկվել են մանրակրկիտ և բազմակողմանի ուսումնասիրության. որոշվել են դրանց *կարմիր շեղումները*, *լուսատվությունն* ու գույները, դիտվել են ռադիոալիքներում, կատարվել են ձևաբանական, լուսաչափական և վիճակագրական հետազոտություններ: Մ. գ-ի լուսատվությունը գտնվում է $10^{8}$—$10^{11}$ արեգակնային լուսատվության սահմաններում, իսկ չափերը երբեմն հասնում են 100 *կպս*-ի: Նախնական վիճակագրական տվյալներով Մ. գ. կազմում են բոլոր գալակտիկաների 5—7%-ը: Մ. գ-ի մի մասն իրար հետ կազմում է կրկնակի գալակտիկաներ, որոնց բաղադրիչները համատեղ ծագում ունեն: Բազմագույն մանրակրկիտ լուսաչափության արդյունքները վկայում են, որ որոշ դեպքերում ոչ ջերմային ճառագայթմամբ օժտված են Մ. գ-ի ոչ միայն կորիզները, այլև արտաքին մասերը: Մի շարք գալակտիկաների կորիզների և որոշ խիստ կոմպակտ գալակտիկաների պայծառությունը փոփոխական է: Երբեմն փոփոխություններ են դիտվում Մ. գ-ի սպեկտրներում. փոփոխվում է սպեկտրային գծերի ինտենսիվությունը, առաջանում են նոր գծեր: Մ. գ-ի շուրջ 10%-ի սպեկտրներում գծերը տարբեր չափով լայնացած են (այնպես, ինչպես Սեյֆերտի տիպի գալակտիկաներում): Պատճառն այն է, որ գալակտիկաների կորիզներից գազն արտահոսում է տարբեր արագություններով: Մ. գ-ի հայտնագործման շնորհիվ Սեյֆերտի տիպի մինչ այդ հայտնի գալակտիկաների թիվը մեկ-երկու տասնյակից հասավ 120-ի: Այս ամենը վկայում է, որ Մ. գ-ի կորիզներում ընթանում են բուռն, ակտիվ պրոցեսներ: Հավանաբար, ճառագայթման և կառուցվածքային պեկուլյարություններն առաջանում են միևնույն ակտիվ պրոցեսների, օրինակ, պայթյունների հետևանքով: Մ. գ-ի հայտնագործումը հաստատեց Վ. Հ. *Համբարձումյանի* ղեկավարությամբ մշակված գալակտիկաների կորիզների ակտիվության ուղղությունը:

*Ա. Քալլօղլյան*

**ՄԱՐԳԱՐՈՎ** Էդուարդ Արտեմի (ծն. 12.6. 1942, Բաքու), հայ սովետական ֆուտբոլիստ, կենտրոնական հարձակվող, ՍՍՀՄ սպորտի վաստ. վարպետ (1973): ՍՄԿԿ անդամ 1977-ից: Խաղացել է Բաքվի «Լոկոմոտիվ» և «Նեֆթչի», Արմավիրի «Տորպեդո», Երևանի «*Արարատ*» (1971—75) թիմերում: ՍՍՀՄ առաջնությունների բրոնզե (1966), արծաթե (1971), ոսկե (1973) մեդալակիր, ՍՍՀՄ գավաթակիր (1973, 1975): Ֆեդոտովի ակումբի անդամ, ՍՍՀՄ առաջնություններում խփել է 129, գավաթային խաղերում՝ 16, Եվրոպայի գավաթների մրցաշարերում՝ 12 գոլ: ՍՍՀՄ I հավաքականի անդամ, աշխարհի VIII առաջնության մասնակից: 1976-ից անցել է մարզչական աշխատանքի:

*Ա. Բաբայան*

**ՄԱՐԳԱՐՏԱԽԵՑԻՆԵՐ**, ծովային և քաղցրահամ ջրերի *մարգարիտ* առաջացնող երկփեղկանի փափկամորթների ընդհանուր անվանումը: Մարգարիտն առաջանում է թիկնոցի և փեղկի միջև: Ծովային Մ. կլորավուն են, տարածված Հնդկական և Խաղաղ օվկիանոսների արևադարձային ծովերում: Որսում են մարգարտի համար: Ճապոնիայում արհեստականորեն բազմացնում են: Քաղցրահամ ջրերի Մ. երկարաձև են՝ տարածված բարեխառն գոտու մաքուր գետերում: Դրանց առաջացրած մարգարիտը որակով զիջում է ծովայինին: Մ-ի փեղկերը ներսից ծածկված են սադափի հաստ շերտով, որն օգտագործվում է կոճակների արտադրության մեջ:

**ՄԱՐԳԱՐՏԱԾԱՂԻԿ** (Bellis), բարդածաղկավորների ընտանիքի միամյա կամ բազմամյա խոտաբույսերի ցեղ: Տերևներն արմատամերձ վարդակներում են, տերևազուրկ ցողունները վերջանում են ծաղկազամբյուղներով: Ծաղիկները սպիտակ են, վարդագույն կամ կարմրավուն, սերմերը հարթ են, ձվաձև: Խիստ ցրտադիմացկուն են, ձյան տակ պահպանվում են ոչ միայն տերևները, այլև կոկոնները: Մ-ի 10(15) տեսակ վայրի վիճակում աճում է Եվրոպայում, Փոքր Ասիայում, Հյուսիսային Ամերիկայում, ՍՍՀՄ-ում՝ 2: Բ ա զ մ ա մ յ ա Մ. (B. perennis) որպես վաղ գարնանը ծաղկող դեկորատիվ բույս մշակվում է Արևմտյան Եվրոպայում, Ղրիմում, ինչպես նաև ՀՍՀ-ում:

**ՄԱՐԳԱՑ**, հայկական հեթանոսական տոմարի 11-րդ ամսվա անունը: Մ-ի 1-ը համապատասխանում է հունիսի 7-ին:

**ՄԱՐԳՈՐԳ ՆԵՐՔԻՆ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի համանուն գավառում: 1909-ին ուներ 182 (25 ընտանիք) հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Գյուղի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է բռնագաղթի ճանապարհին: Սակավաթիվ փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՄԱՐԳՍ**, Մ ա ր ք ս, գյուղ Արևմտյան Հայաստանում, Վանի վիլայեթի Հայոց ձոր գավառում, Խոշաբ գետի հովտում: 1909-ին ուներ 151 (23 ընտանիք) հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը 1915-ի հուլիսին, ռուս. զորքերի նահանջի ժամանակ, գաղթել և բնակություն են հաստատել Արևելյան Հայաստանում:

**ՄԱՐԳՈՒԼՈՎԱ** (Մարգուլյանց) Թերեզա Քրիստափորի (ծն. 1912, Բաքու), ատոմային էներգետիկայի բնագավառի սովետական գիտնական: Տեխ. գիտ. դ-ր (1951), պրոֆեսոր (1953): ՍՄԿԿ անդամ 1942-ից: 1934-ին ավարտել է Ադրբեջանի ինդուստրիալ ինստ-ը: 1940-ից աշխատում է Մոսկվայի էներգետիկական ինստ-ում. 1956—70-ին՝ ամբիոնի վարիչ: 1971-ին «Ատոմային էլեկտրակայաններ» դասագրքի համար Մ-ին շնորհվել է ՍՍՀՄ պետ. մրցանակ: Մ. գիտության և տեխնիկայի բնագավառի ՍՍՀՄ պետ. և լենինյան մրցանակներ շնորհող հանձնաժողովի անդամ է: 1976-ից Բուդապեշտի տեխնիկական համալսարանի պատվավոր դոկտոր է: Պարգևատրվել է Լենինի շքանշանով:

*Երկ.* Применение комплексонов в теплоэнергетике, М., 1973; Атомные электрические станции, 3 изд., перераб. и доп., М., 1978.

*Լ. Ղուլյան*

Թ. Ք. Մարգուլովա

**ՄԱՐԳՈՒՆԻ** (Գ ր ի գ ո ր յ ա ն) Վաղինակ Խաչատուրի [ծն. 18.12.1908 (1.1.1909), Աշտարակ], հայ սովետական դերասան: ՀՍՍՀ ժող. արտիստ (1965): ՍՄԿԿ անդամ 1940-ից: 1928-ից խաղացել է Ա. Խարազյանի շրջիկ թատրոնում: 1930-ից աշխատում է Սունդուկյանի անվ. թատրոնում: Բնութագրական դերերի կատարող է: Նրա մարմնավորած կերպարները գունեղ և արտահայտիչ են: Լավագույն դերերից են՝ Տանուտեր Սիմոն («Հացի խնդիր», ըստ Պռոշյանի), Ճարտարապետ (Դեմիրճյանի «Երկիր հայրենի»), Երկաթ, Աբիսողոմ աղա (Պարոնյանի «Պաղտասար աղբար», «Մեծապատիվ մուրացկաններ»), Գասպար (Ժ. Հարությունյանի «Խաչմերուկ»), Կարանդիշև (Ա. Օստրովսկու «Անօժիտը»), Ջուլիո (Լոպե դե Վեգայի «Այլոց համար հիմար, իրեն համար խելոք»): 25 տարուց ավելի խաղացել է Փողհարի (Մ. Գորկու «Եգոր Բուլըչովը և ուրիշները») և Բաղդասար ամու (Վրթ. Փափազյանի «Ժայռը») դերերը: Նկարահանվել է կինոյում: Պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով:

*Բ. Հովակիմյան*

**ՄԱՐԴ**, երկրային կենդանի օրգանիզմների բարձրագույն աստիճանը, հասարակական-պատմական գործունեության և մշակույթի սուբյեկտը: Մ. գիտելիքի տարբեր բնագավառների (սոցիոլոգիա, հոգեբանություն, ֆիզիոլոգիա, մանկավարժություն, բժշկություն ևն) հետազոտման առարկան է: Ընդհանրացնելով այդ գիտությունների տվյալները, փիլիսոփայությունը դրանց տալիս է որոշակի մեկնաբանություն և իմաստ: Մարքսիզմը, մերժելով իդեալիստական և նատուրալիստական ըմբռնումները, Մ. դիտում է որպես հասարակության և աշխատանքային գործունեության արգասիք և *սուբյեկտ*, որպես «...հասարակական բոլոր հարաբերությունների ամբողջություն» (Մ ա ր ք ս Կ. և Է ն գ ե լ ս Ֆ., Երկ., հ. 1, 1972, էջ 3): Տես նաև *Անհատ*, *Անձնավորություն*:

Մ ա ր դ ու կ ե ն ս ա բ ա ն ա կ ա ն ա ռ ա ն ձ ն ա հ ա տ կ ու թ յ ու ն ն ե ր ը: Մ. պատկանում է քորդավորների (Chordata) տիպի, կաթնասունների (Mamalia) դասի, պրիմատների (Primates) կարգի, հոմինիդների (Hominidae) ընտանիքի, մարդ (Homo) սեռի, բանական մարդ (Homo sapiens) տեսակին: Մ-ու օրգանիզմը ողնաշարավորների, հատկապես կաթնասունների հետ ունի բազմաթիվ ընդհանուր հատկանիշներ: Մ-ու, ինչպես և ողնաշարավորների կմախքի առանցքը կազմում է ողնաշարը: Մ. ունի երկու զույգ վերջավորություններ, փակ արյունատար և խողովակաձև նյարդային համակարգեր, զարգացած զգայարաններ, մարմնի կայուն ջերմաստիճան, թոքային շնչառություն: Մաշկում կան քրտնագեղձեր, ճարպագեղձեր, մազեր: Մայրական օրգանիզմում սաղմը գտնվում է հատուկ գոյացության՝ ընկերքի մեջ, երեխան սնվում է կաթով: Մարդկային բոլոր խմբերին հատուկ է սեռական երկձևությունը: Մ-ու անատոմիա-ֆիզիոլոգիական բնորոշ առանձնահատկություններն են՝ ուղղաձիգ կեցվածքն ու քայլվածքը, գործիքների պատրաստման և գործածման համար օգտագործվող ազատ վերին վերջույթները, *գլխուղեղի* կեղևի և հաղորդակցության միջոցների բարձր զարգացածությունը, ինչպես նաև ատամների, ծնոտների և մարսողության օրգանների կառուցվածքի որոշ գծերը: Մ-ու հաղորդակցության գլխավոր միջոցը հոդաբաշխ խոսքն է, որը նպաստել է դատողության, կամքի, զգացմունքների և հասարակական կապերի զարգացմանը: Մ-ու գլխուղեղը և՛ բացարձակ, և՛ հարաբերական ցուցանիշներով գերազանցում է կապիկների ուղեղին: Օրինակ՝ Մ-ու գլխուղեղի զանգվածը երեք անգամ մեծ է գորիլլայի գլխուղեղի զանգվածից, որի մարմնի զանգվածը երեք անգամ գերազանցում է Մ-ու մարմնի զանգվածին: Նյարդային համակարգի բացառիկ բարձր կազմակերպվածության շնորհիվ Մ. օժտված է ինտելեկտուալ և էմոցիոնալ զարգացման անսահման հնարավորություններով: Ժամանակակից ողջ մարդկությունը պատկանում է մեկ տեսակի, որի սահմաններում առանձնացնում են կենսբ. միևնույն բարձր աստիճանի վրա կանգնած մի քանի հիմնական *ռասաներ*, որոնց առաջացման ժամանակի և օջախների թվի վերաբերյալ կան մի քանի հիպոթեզներ: Ըստ որոշ գիտնականների կարծիքի, Մ. և նրա ռասաներն առաջացել են մեկ քիչ թե շատ ընդարձակ տարածքում (մ ո ն ո ց ե ն տ ր ի զ մ), մյուսներն ընդունում են 2—5 այդպիսի կենտրոնների գոյությունը (պ ո լ ի ց ե ն տ ր ի զ մ): Մարդկության միասնությունը պայմանավորված է ծագման ընդհանրությամբ, տարբեր ռասաների հեշտ խաչասերվելիությամբ, ֆիզիկական, մտավոր և հոգեկան զարգացման միատեսակ բարձր աստիճանով:

Մ ա ր դ ու ծ ա գ ու մ ը: Մ. առաջացել է երկարատև և բարդ պատմա-էվոլյուցիոն զարգացման ընթացքում: Տարածված տեսակետի համաձայն էվոլյուցիայի մարդկային ճյուղն անջատվել է մարդանման կապիկների հետ ընդհանուր բնից միոցենում (12—15 մլն տարի առաջ): Մինչև վերջին ժամանակներս հոմինիդների ընտանիքի առաջին արժանահավատ ներկայացուցիչը համարվում էր անգլ. գիտնականներ Լ. Լիկիի, Ֆ. Թոբայասի և Ջ. Նեյպիրի 1964-ին Օլդովայ կիրճում հայտնաբերած, մոտ 2 մլն տարի առաջ ապրած «հմուտ մարդ» Homo habilis-ը, որն ունեցել է ուղիղ քայլվածք, մարդանման կապիկներից ավելի զարգացած ուղեղ, պատրաստել է պարզունակ քարե գործիքներ: Սակայն 1970-ական թթ. Քենիայում, Եթովպիայում և Տանզանիայում հայտնաբերված բրածո մնացորդները վկայում են հոմինիդների, մասնավորապես Homo սեռի ավելի մեծ հնության մասին (3—3,5 մլն տարի): Մ-ու ժամանակագրական նախորդներ են համարվում նաև արխանթրոպուսները, որոնք ի հայտ են եկել ավելի քան 1,9 մլն տարի առաջ, և պալեոանթրոպուսները (ապրել են 0,3—0,035 մլն տարի առաջ): Ժամանակակից բանական Մ. հանդես է եկել ոչ ուշ, քան 40 հզ. տարի առաջ (կ ր ո մ ա ն յ ո ն յ ա ն Մ.), իսկ որոշ տվյալների համաձայն՝ ավելի վաղ: Մ-ու էվոլյուցիայի ընդհանուր պատկերը բավականաչափ բարդ է և մինչև վերջ պարզաբանված չէ: Ժամանակակից Մ-ու էվոլյուցիայում կենսբ. գործոնները կորցնում են իրենց առաջատար նշանակությունը՝ զիջելով այն սոցիալականին: Տես նաև *Անթրոպոգենեզ*:

**ՄԱՐԴ ՀՈՎՀԱՆՆԵՍ** [Մարգարյան Հովհաննես Սարգսի, 1890, գ. Մուժումբար (Թավրիզի մոտ)—3.6.1972, Թեհրան], հայ գրող: 1900-ին ծնողների հետ փոխադրվել է Թիֆլիս, սովորել ռուս. գիմնազիայում: Սկսել է գրել 1912-ից, աշխատակցել է «Պատանի» (1912—14) ամսագրին: 1929-ին Մ. Հ. վերադարձել է Իրան, հաստատվել Թավրիզում: 1935-ից հանդես է եկել Հովհաննես Մարդ գրական անունով: Տպագրվել է սփյուռքահայ բազմաթիվ

պարբերականներում: 1946-ին լույս է տեսել նրա «Զուլալ երգեր» բանաստեղծությունների ժողովածուն, որի հենքը հայրենասիրությունն է («Հայաստանին»): Մի շարք գործեր տոգորված են սիրով՝ մարդու ու մարդկայինի նկատմամբ («Երգերի երգը»): Մ. Հ. նաև թարգմանիչ է: 1962-ին հրատարակել է աշխարհի շատ բանաստեղծներ ընդգրկող «Հարազատ էջեր» խորագրով առաջին գիրքը, 1967-ին՝ երկրորդը: 1971-ին լույս է տեսել թարգմանական ևս մեկ գործ՝ Իրանի դասական բանաստեղծների քառյակների «Ճշմարտաբան» ժողովածուն: *Վ. Մարտիրոսյան*

**ՄԱՐԴԱԲԱՆԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔ**, անթրոպոլոգիզմ, փիլիսոփայական ըմբռնում, որը «մարդ» հասկացությունը համարում է հիմնական աշխարհայացքային կատեգորիա և դրանից ելնելով մշակում է պատկերացումների համակարգ բնության, հասարակության և մտածողության մասին: Մ. ս. հակադրվում է մատերիայի և ոգու դուալիստական անջատմանը, մատերիականի և հոգեկանի (իդեալականի) փոխհարաբերության իդեալիստական ըմբռնմանը: Մ. ս., իր դասական դրսևորմամբ, մինչմարքսիստական *մատերիալիզմի* ձևերից է, որին, սակայն, հատուկ է մարդու ձևավորման պրոցեսում հասարակական պրակտիկայի դերի բացասումը: Մ. ս. առաջին պլան է մղում հասարակական-արտադրական հարաբերությունների ամբողջությունից դուրս վերացական մարդուն, որը դիտվում է միայն բնության մի մաս, մատերիական և հոգեկան հատկանիշներով օժտված անփոփոխ բնական էակ. անտեսվում է մարդու հասարակական էությունը: Մատերիալիստորեն ըմբռնված Մ. ս. առավել ամբողջականորեն արտահայտվել է Լ. *Ֆոյերբախի* և Ն. *Չեռնիշևսկու* ուսմունքներում: Նման մոտեցում առկա է նաև XIX դ. հայ իրականության մեջ (Ա. Փափովիչ, Մ. Նալբանդյան): Մ. ս-ի իդեալիստական տարբերակները զարգացրել են Ֆ. Նիցշեն, Վ. Դիլթեյը, Գ. Զիմմելը, Մ. Շիլլերը: Արդի բուրժ. փիլիսոփայությունը Մ. ս. օգտագործում է իբրև իդեալիզմի հիմնավորում, որքանով օբյեկտիվ իրականությունը դիտվում է մարդկային էությունիցածանցյալ (էկզիստենցիալիզմ, փիլիսոփայական մարդաբանություն, սոցիալ-դարվինիզմ, ֆրոյդիզմ ևն):

**ՄԱՐԴԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, միջազգային տերմինը՝ անթրոպոլոգիա (հուն. ἄνθρωπος — մարդ և ...*լոգիա*), գիտություն *մարդու* առաջացման ու զարգացման, *ռասաների* ձևավորման և մարդու կազմվածքի նորմալ տարբերակների վերաբերյալ: Արտասահմանում, բացի մարդու բնական պատմությունից, Մ-յան մեջ ընդգրկում են նաև *հնագիտությունն* ու *ազգագրությունը*: Սովետական գիտության մեջ ընդունված է Մ. բաժանել երեք հիմնական ճյուղերի՝ մորֆոլոգիա (կառուցվածքաբանություն), անթրոպոգենեզ (մարդագոյացում) և ռասայագիտություն: Մարդու մորֆոլոգիան իր հերթին բաժանվում է սոմատոլոգիայի (մարմնագիտություն) և մերոլոգիայի (մասագիտություն): Սոմատոլոգիան ուսումնասիրում է մարդու օրգանիզմի անհատական փոփոխականությունն ամբողջովին, սեռական դիմորֆիզմը (երկտեսություն) մարմնի կառուցվածքում, հասակային չափերի ու համամասնությունների փոփոխությունների սաղմնային շրջանից մինչև ծերություն: Մերոլոգիան ուսումնասիրում է մարմնի առանձին մասերի տարբերակները: Համեմատական անատոմիան, հնէամարդաբանությունը, ինչպես և սաղմնաբանությունը (էմբրիոլոգիա) ծառայում են մարդու առաջացման և զարգացման խնդրի պարզաբանմանը, ուստի մտնում են մարդագոյացման ուսմունքի մեջ, սերտորեն առնչվում փիլիսոփայության, պալեոլիթյան հնագիտության, պլիոցենի և պլեյստոցենի երկրաբանության, մարդկանց և կենդանիների բարձրագույն նյարդային գործունեության ֆիզիոլոգիայի և հոգեբանության հետ: *Հնէամարդաբանությունն* ուսումնասիրում է պեղածո մարդկանց և մարդու մերձավոր ազգակիցների՝ բարձրակարգ կաթնասունների ոսկրային մնացորդները: Ռասայագիտությունն ուսումնասիրում է մարդկային ռասաների դասակարգումը, նրանց ձևավորման պատմությունը և առաջացման պայմանները: Էթնոգենեզին վերաբերող ուսումնասիրություններում Մ. զուգակցվում է լեզվագիտության, պատմության, հնագիտության հետ, ռասայագոյացման շարժիչ ուժերն ուսումնասիրելիս՝ *գենետիկայի* (ծագումնաբանություն), ֆիզիոլոգիայի, կենդանական աշխարհագրության, կլիմայագիտության, տեսակների առաջացման ընդհանուր տեսության հետ: 1920-ական թթ. մեկ ընդհանուր՝ «մարդու կենսաբանություն» անվանմամբ զարգացավ մարդաբանական գիտաճյուղերի մի ամբողջ համակարգ: Որոշ գիտնականներ Մ-յան գրեթե ողջ բովանդակությունը ներառնում են «մարդու կենսաբանություն» հասկացության մեջ: Առավել ճիշտ է այդ հասկացության տակ ըմբռնել միայն Մ-յան այն կարևոր բաժինը, որն ուսումնասիրում է մարդու զարգացման վրա ազդող ֆիզիոլոգիական, կենսաքիմիական և գենետիկական գործոնները:

Մ., չափման և նկարագրության օգնությամբ, ուսումնասիրում է մարմնի չափերի ու ձևերի տարատեսակները: Նկարագրական մեթոդը կոչվում է անթրոպոսկոպիա (մարդադիտում), չափագրականը՝ անթրոպոմետրիա (մարդաչափություն), որոնցում մեծ է վիճակագրական մեթոդների դերը: Մ-յան կարևոր մեթոդներից են գանգաբանությունը, ոսկրաբանությունը, ատամնագիտությունը, մարդաբանական լուսանկարչությունը, ոտնատակերի ու ձեռքերի մաշկի գծերի արտադաջումը, դեմքի գիպսե դիմակների հանումը ևն: Ժամանակակից Մ-յան մեջ տարածված են հեմատոլոգիական (արյունաբանական), միկրոանատոմիայի, կենսաքիմիայի, ռենտգենոլոգիայի, ռադիոակտիվ իզոտոպների օգտագործման, քարտեզագրական և այլ մեթոդներ:

Մարդաբանական դիտարկումների փաստեր են պարունակում դեռևս հին հույների (Սոկրատես, Անաքսիմանդրոս, Անաքսագորաս, Հիպոկրատես, Հերոդոտոս, Արիստոտել ևն) գրվածքները: Մարդու անատոմիան ուսումնասիրելու գործում խոշոր քայլեր կատարվեցին Վերածննդի դարաշրջանում: Որոշ անատոմներ ու նկարիչներ մեծ ուշադրություն հատկացրին մարդու օրգանների առանձնահատկություններին ու մարմնի կառուցվածքի տարբեր տիպերին: Աշխարհագրական խոշոր հայտնագործությունները (XV—XVI դդ.) ընդլայնեցին մարդաբանական գիտելիքների սահմանները, եվրոպացիներին ծանոթացրին, թեկուզ մակերեսորեն, Արևելյան Ասիայի ռասայական տեսակներին, Ամերիկայի բնակչությունը՝ Արևելյան Սիբիրի, Հրո երկրի և Օվկիանիայի ժողովուրդներին: XVIII դ. քիչ թե շատ լուրջ փորձեր կատարվեցին մարդու առաջացման և բնության մեջ նրա տեղի վերաբերյալ գիտ. հիպոթեզներ ստեղծելու ուղղությամբ: Մ. որպես գիտություն սկսեց ձևավորվել XIX դ.: Մ-յան պաշտոնական սկիզբը դրեց Պ. Բրոկան՝ 1858-ին հիմնելով Փարիզյան մարդաբանական ընկերությունը: Նա միաժամանակ ստեղծեց չափագրական առաջին գործիքները և մշակեց ուսումնասիրության մեթոդիկան: 1868-ին հիմնադրվեց Մարդաբանական ուսումնասիրությունների լաբորատորիան, իսկ 1875-ին՝ Մարդաբանության դպրոցը: Այնուհետև մարդաբանական հաստատություններ հիմնվեցին Լոնդոնում (1863), Մոսկվայում (1864), Մադրիդում (1865), Բեռլինում և այլուր: Ռ. Մարտինը էապես վերամշակեց ուսումնասիրման մեթոդիկան, կատարելագործեց գործիքները, կիրառեց տարբերակային վիճակագրությունը: XIX դ. Արևմուտքում առաջացան մի շարք հետադիմական ուղղություններ, որոնք ձգնում էին հիմնավորել ռասաների անհավասարության գաղափարը:

Ռուսաստանում 1864-ին հիմնվեց Բնագիտության սիրողների ընկերության մարդաբանական բաժինը: 1919-ին Մոսկվայի համալսարանին կից հիմնվեց Մ-յան ամբիոն, 1922-ին՝ Մ-յան ինստ.: Սովետական Մ-յանը բնորոշ են ուսումնասիրման լայն ծավալը, պլանավորված աշխատանքները, միասնական մեթոդների մշակումը: Մեծ ավանդ ունեն Դ. Ն. Անուչինը, Վ. Վ. Բունակը, Գ. Ֆ. Դեբեցը, Վ. Վ. Գինզբուրգը, Մ. Գ. Լևինը, Մ. Ֆ. Նեստուրխը, Վ. Պ. Ալեքսեևը ևն: Մարդաբանական ուսումնասիրություններ են կատարվում Մոսկվայի Լոմոնոսովի անվ. համալսարանին կից Դ. Ն. Անուչինի անվ. Մ-յան ինստ-ում, միութենական հանրապետությունների ԳԱ-ներում, Լենինգրադի, Կիևի, Թբիլիսիի, Տարտուի և այլ քաղաքների համալսարաններում ևն:

Հայկ. լեռնաշխարհի բնակչության ֆիզիկական առանձնահատկությունների մասին տեղեկություններ կան դեռևս մ. թ. ա. V դարից (Քսենոփոն ևն): Հայերի մարդաբանական տիպը նկարագրում է պատմահայր Մովսես Խորենացին՝ «Վահագնի ծնունդը» վիպերգության մեջ: Հայերի վերաբերյալ մարդաբանական գիտ. ուսումնասիրությունների սկիզբ է համարվում 1873-ը, երբ Պ. Լանգերհանսը հրատարակեց մեծահասակ 6 հայերի վերաբերյալ տվյալներ: Այնուհետև իրենց ուսումնասիրությունների արդյունքներն

են հաղորդել Է. Շանտրը, Ռ. Էրկերտը, Ի. Պանտյուխովը, Ա. Իվանովսկին, Դ. Անուչինը, Է. Էրիկսոնը, Օ. Վիլլերովան, Ե. Սեմենսկայան են: XIX դ. վերջին, XX դ. սկզբին Ֆ. ֆոն Լուշանը նշեց մի շարք ընդհանուր մարդաբանական գծեր խեթերի (ըստ պատկերագրական նյութի) և արդի հայերի միջև, հանգեց այն եզրակացության, որ հայերը կազմում են յուրահատուկ մարդաբանական տիպ, որը նա անվանեց *արմենոիդ*: Հայերի վերաբերյալ մարդաբանական գիտական ուսումնասիրությունների հիմքը դրեց Վ. Վ. Բունակը, նշելով հայերի մարդաբանական տիպի առանձնահատուկ տեղը եվրասիական և եվրաֆրիկյան ժողովուրդների ու ցեղերի մեջ՝ առաջարկելով այդ տիպը անվանել «պոնտոզագրոսյան»: Հետագայում, Սևանի ափերին հայտնաբերված երկաթի դարաշրջանի պեղածո գանգերի հիման վրա, նա տեղի բնակչության մարդաբանական տիպը կապեց եվրոպեոիդ ռասայի հս. ճյուղի հետ: Գ. Ֆ. Դեբեցը, անդրադառնալով հայերի Մ-յան հարցերին, եզրակացրեց, որ Հայաստանի և Արևելյան Վրաստանի բնակչությունը պատկանում է առաջավորասիական Մ-ական տիպին: 1950—60-ական թթ. Հայկ., Վրաց. և Ադրբ. ՍՍՀ-ների մի շարք շրջանների հայերին մարդաբանորեն ուսումնասիրեց Դեբեցի աշակերտ Մ. Գ. Աբդուշելիշվիլին:

Հայերից առաջինը հայ Մ-յամբ զբաղվել է Աս. Ալթունյանը (Շանտրի հետ), 1882 և 1884-ին կատարելով չափագրություններ, որոնք 1907-ին հրատարակեց բժիշկ Վ. Մինասյանը (վերջինս փորձել է ապացուցել, որ Հայկական լեռնաշխարհի բնակչության մարդաբանական տիպը մոտ է ալպիականին, իսկ հայերը խեթերի ժառանգորդներն են): Հայերի Մ-յամբ զբաղվել է նաև ֆրանսահայ մարդաբան Ռ. Քեռումյանը, որը մերժելով Լուշանի և Բունակի կարծիքները, գտնում էր, որ արմենոիդ և բալկանյան դինարյան տիպերը նույն ռասայի տարբերակներ են: Սկսած 1960-ական թթ. մարդաբանական տվյալների հիման վրա դեմքի պլաստիկ վերականգնման աշխատանքներ է կատարում պրոֆեսոր Ա. Ճաղարյանը: ՍՍՀՄ-ում հայերի Մ-յամբ զբաղվում են Մոսկվայի Մ-յան ինստ-ում, ՍՍՀՄ ԳԱ Միկլուխո-Մակլայի անվ. ազգագրության ինստ-ի Մ-յան սեկտորում, ՀՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստ-ի Մ-յան լաբորատորիայում (1970-ից):

*Գրկ.* Մինասյան Մ., Ծագումն ու նկարագիր հայ ազգին, հ. 1, Ֆրեզնո, 1922: Էսապալյան Պ., Հայերը մարդախոսական տեսակետե, «ՀԱ», 1934, № 5—12, 1935, № 1—2: Абдушелишвили М. Г., Антропология древнего и современного населения Грузии, Тб., 1964; Рогинский Я. Я., Левин М. Г., Антропология, 3 изд., перераб. и доп., М., 1978; Kherumian R. A., Introduction al' Antropologie du Caucasse. Les Armeniens, P., 1943; Martin R., Lehrbuch der Anthropologie in systematischer Darstellung, 3 Aufl., Bd 1—2, Stuttgart, 1956—60.

*Է. Սիմոնյան, Ն. Քոչար*

**ՄԱՐԴԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆ**, անթրոպոմորֆիզմ, կենդանի և անկենդան բնության երևույթներին, առասպելական էակներին (ոգիներին, աստվածներին) մարդկային հոգեկան և այլ հատկանիշներ վերագրելը: Մ. աշխարհայացքի նախասկզբնական ձև է և երևույթներին հաղորդել է գործելու, հուզվելու, ապրելու, մեռնելու և մարդկային այլ ունակություններ (երկիրը քնած է, երկինքը մռայլվում է): Այսպիսի Մ., որպես մտածողության եղանակ, ներկայումս հատուկ է միայն երեխայի հոգեկանին: Նման պարզունակ դոգմատիկական Մ. բնորոշ է մարդկային հասարակության զարգացման վաղ փուլերին և աստիճանաբար վերաճում է կրոնական Մ-յան, որը դրսևորվում է աստվածների և գերբնական էակների մասին դիցաբանական և կրոնական պատկերացումներում: Մ. հատուկ է նաև ժող. ստեղծագործությանը, պոեզիային, արվեստին:

Գիտության զարգացման ընթացքում Մ. տեղը զիջում է գիտական աշխարհայացքին, թեև որոշ բնագավառներում շարունակում է գոյատևել (օրինակ, կենդանահոգեբանությունում): Արդի գիտ., տեխ. և կիբեռնետիկական գրականության մեջ հասկացությունների մարդակերպային գործածման (մեքենան «հիշում է», «խնդիր է լուծում» ևն) հիմքում ընկած է այն, որ մեքենան ընդօրինակում և կատարում է մարդուն բնորոշ գործողություններ:

**ՄԱՐԴԱԿԵՐՈՒԹՅՈՒՆ**, մարդու միս ուտելու երևույթ, կաննիբալիզմի [միևնույն տեսակի կենդանիների՝ միմյանց ուտելու երևույթը (ֆրանս. cannibale, իսպ. canibal — մարդակեր)] տարատեսակ: Անցյալում տարածված է եղել մի շարք ցեղերի ու ժողովուրդների մոտ: Գոյություն են ունեցել կենցաղային (իբրև զուտ սննդի միջոց) և կրոնա-հմայական Մ.: Կենցաղային Մ. գործնականում կիրառվել է քարի դարի հնագույն շրջանում: Շատ ցեղերի ու ժողովուրդների մոտ տարածված կրոնա-հմայական Մ. արտահայտվել է սպանված թշնամիների, ռազմագերիների, մեռած ցեղակիցների մարմնի զանազան մասերն ուտելով: Նման սովորույթը հիմնված է եղել այնպիսի համոզման վրա, ըստ որի, սպանվածի ուժը և այլ հատկանիշներ, իբր փոխանցվում էին նրա միսն ուտողին: Մ-յան վերապրուկային արտահայտությունը պահպանվել է ժամանակակից խոշոր կրոնների որոշ ծեսերում (օրինակ՝ հացով և գինով հաղորդությունը քրիստոնեության մեջ, որն ունի Քրիստոսի միսն ու արյունը ճաշակելու խորհուրդ):

**ՄԱՐԴԱՀԱՄԱՐ**, տարվա որևէ կոնկրետ պահին երկրի, նրա վարչական առանձին միավորների տարածքում բնակվողներից յուրաքանչյուրի ժողովրդագրական, տընտեսական, սոցիալական, կրթական, էթնիկական և այլ հատկանիշները բնութագրող տվյալների հավաքման պրոցես: Մ. անցկացնելու նպատակով մշակվում է միասնական ծրագիր, ուր արտահայտվում են յուրաքանչյուր բնակչի ժողովրդագրական (սեռ, տարիք, ընտանեկան դրություն), տնտ. (զբաղմունք, տնտ. գործունեության ասպարեզ, կապիտալիստական երկրներում՝ նաև անհատի դիրքը զբաղմունքի մեջ, երբեմն՝ գործազրկությունը), էթնիկական (ազգություն, լեզու, դավանանք) հատկանիշները, կրթությունը (գրագիտության աստիճան, դպրոց հաճախելը), սոցիալական դրությունն ու անձը բնութագրող այլ հատկանիշներ (քաղաքացիություն, ծննդավայր, բնակավայրի փոփոխություն, ֆիզիկական և հոգեկան արատներ, մասնակցություն պատերազմին ևն): Կարևորվում են նաև սոցիալական այս կամ այն խմբին պատկանելությունը բնութագրող հատկանիշները: Բնակչության առանձին խմբերի համար ծրագիրն առավել ընդարձակ է, իսկ որոշ հարցեր կրում են ընտրանքային բնույթ: Մ. անցկացվում է կարճ ժամկետում (մի քանի օր կամ շաբաթ), բայց բոլոր տեղեկությունները հավաքվում են սովորաբար հաշվեգրման նախօրյակի կեսգիշերի դրությամբ. այդ պահից առաջ մահացածները կամ հետո ծնվածները չեն հաշվառվում: Տեղեկությունները հավաքում են հատուկ հրահանգավորված հաշվառողները՝ բնակարանները շրջելով: Հաշվառման թերթիկները լրացնում են հաշվառողները՝ բանավոր հարցմամբ, կամ բնակիչները: Տեղեկությունների հիմքը բնակչի բանավոր պատասխաններն են, այլ ոչ թե փաստաթղթերը: Անձանց վերաբերյալ անհատական տեղեկություններ հրապարակելը, հաշվառումից դուրս թողնելը կամ կրկնահաշվառումը բացառվում են: Մ-ի նյութերը մշակվում են ԷՀՄ-ով, առավել կարևոր տվյալները հաշվառվում են նախապես, երբեմն ընտրանքային մեթոդով: Նյութերի լրիվ մշակումը տևում է մի քանի տարի:

Ռուսաստանում XVIII—XIX դդ. բնակչության հաշվառումն անց էր կացվում վերստուգման ընթացքում. աշխատանոցային (կամերալային) ցուցակագրությամբ (1806-ին, 1832-ին, 1873-ին, իսկ 1886-ին՝ ընտանեկան ցուցակագրությամբ) գրանցվում էին բնակավայրը, նրա ծխերի ու շնչերի թիվը, բնակիչների սեռատարիքային կազմը: Բնակչությանը հարկելու նպատակով ցուցակագրում էին միայն տղամարդկանց, այդ պատճառով հաշվառման տվյալները բնակչության իրական թվին չէին համապատասխանում: Համընդհանուր Մ. Ռուսաստանում իրականացվել է միայն 1897-ին: Մ. է կատարվել նաև միջնադարյան Հայաստանում (տես *Աշխարհագիր*): Արևելյան Հայաստանում աշխատանոցային ցուցակագրությունը կատարվել է 1829—32-ին, առանձին վայրերում այն տևել է մինչև 1934-ը: Որոշ տվյալներ ճշտելու համար ցուցակագրություն է կատարվել նաև 1842-ին:

ՍՍՀՄ-ում Մ-ներն անցկացվել են 1920-ին, 1923-ին (միայն քաղաքային բնակչության), 1926-ին, 1937-ին (նյութերը խոտանվել են), 1939-ին, 1959-ին, 1970-ին և 1979-ին: Դրանք իրականացվում են հիմնականում տասնամյակի իններորդ տարվա սկզբին, քանի որ ստացված նյութերը դառնում են ժողտնտեսության զարգացման և կուլտուրական շինարարության գալիք հնգամյակների գիտական պլանավորման հիմք:

Արտասահմանում կանոնավոր Մ-ները սկսվել են XVIII դ. վերջին — XIX դ. սկզբին (ԱՄՆ-ում՝ 1790-ին, Շվեդիայում՝ 1800-ին, Մեծ Բրիտանիայում՝ 1801-ին

ևն): Զարգացած երկրներում Մ. իրականացվում է յուրաքանչյուր 10 տարին մեկ, որպես կանոն, 0-ով կամ 1-ով վերջացող տարիներին:

*Գրկ.* Խոջաբեկյան Վ. Ե., Հայաստանի բնակչությունը և նրա զբաղվածությունը, Ե., 1979: Гозулов А. И., Переписи населения СССР и капиталистических стран, М., 1936; Его же, Переписи населения земного шара (Хронологические таблицы), М., 1970; Курс демографии, под ред. А. Я. Боярского, 2 изд., М., 1974. *Վ. Խոջաբեկյան*

**ՄԱՐԴԱՂԻ**, Մարդոյ աղի, Մարդոյ ուղի, Մարդուղի, գավառ Մեծ Հայքի Տուրուբերան նահանգում, Երասխ գետի ակունքների շրջանում: Արմ-ից Մեղեդուխի լեռնաշղթայով (մինչև Այծպտկունք լեռը) բաժանվում էր Բարձր Հայք նահանգի Կարին գավառից, արլ-ից սահմանակցում էր Տուրուբերանի Դասնավորք, Տվարածատափ և Դալար գավառներին, հվ-ից ձգվում մինչև Սերմանց (Բյուրակնյան) լեռները: Միջին դարերում Մ. իր կենտրոնական բերդի անունով կոչվել է նաև Սևուկ բերդակ: Տարածքով մոտավորապես համապատասխանում է հետագայի Էրզրումի վիլայեթի Թեքմանի շրջանին: Լեռնային է, կլիման՝ ցուրտ, տարեկան տեղումների քանակը՝ 800—900 *մմ*: Հայտնի է սառնորակ աղբյուրներով, փարթամ արոտավայրերով ու խոտհարքներով:

Մ-ի մասին պատմական տեղեկությունները սակավ են: Ենթադրվում է, որ գավառանունն առաջացել է «մարդ» (ցեղանուն) և «աղխ» («տոհմ», «ցեղ») բառերից: Հայկ. առաջին Աշխարհացույցում Մ. հիշատակվում է որպես սալակ և ձիոկ հանքանյութերով, ինչպես նաև սև և սպիտակ նավթով հարուստ գավառ: Մ. եղել է առանձին եպիսկոպոսական թեմ: Արտաշատի ժողովին (450) մասնակցողների թվում հիշատակվում են Մ-ի Եվղաղ եպիսկոպոսը, իսկ Դվինի ժողովին (555)՝ Հովհաննես եպիսկոպոսը:

*Գրկ.* Ինճիճյան Ղ., Ստորագրութիւն Հին Հայաստանեայց, Վնտ., 1822: Հակոբյան Թ. Խ., Հայաստանի պատմական աշխարհագրություն, Ե., 1968: Адонц Н., Армения в эпоху Юстиниана, Е., 1971. *Թ. Հակոբյան*

**ՄԱՐԴԱՍԻՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆ**, Մարդասիրական ընկերություն հանուն Ս. Գրիգորի, Լուսավորչին Հայաստանի, հայկական բարեգործական կազմակերպություն: Հիմնվել է 1864-ի մայիսի 21-ին, Բաքվում, բժշկապետ Դ. Հ. *Ռուստամյանի*, Մ. Ջ. Ջոհրապյանցի և տեղի այլ ազդեցիկ հայերի նախաձեռնությամբ՝ լուսավորական, մշակութային և բարեգործական գործունեություն ծավալելու նպատակով: Ըստ հաստատված կանոնադրության, ունեցել է հիմնադիր, պատվավոր, անփոփոխ և տարեկան անդամներ: Ղեկավարել են հիմնադիր անդամները, խորհուրդը (3 տարի ժամկետով ընտրված նախագահը և 8 անդամները), ընդհանուր ժողովը: Իրավունք է ունեցել գործելու Ռուսաստանի հայաբնակ վայրերում: Հաշվետու է եղել Կովկասի փոխարքային և Բաքվի նահանգապետին: Եկամուտները գոյացել են կազմակերպված միջոցառումներից, անդամավճարներից, նվիրատվություններից: Մինչև 1875-ը գործունեություն է ծավալել հիմնականում Բաքվում: Մ. ը-յան աշխատանքը առավել բեղմնավոր է եղել 1875—1899-ին: Այն ընդգրկել է Ռուսաստանի հայաբնակ վայրերը, մասամբ նաև՝ Արևմտյան Հայաստանը: Մ. ը. նյութական օգնություն է ցույց տվել կարիքավոր հայ մտավորականությանը, ուսանողներին, աշակերտներին, այրիներին, որբերին, գաղթականներին: Նշել է մշակութային և հասարակական գործիչների ու կազմակերպությունների հոբելյանական տարելիցները, կազմակերպել դասախոսություններ, համաճարակների դեմ պայքարի սանիտարական խմբեր, բացել հիվանդանոցներ, ճաշարաններ, կարի ու ձևի դասընթացներ: 1870—79-ին գործել է տպարան և թանգարան, որտեղ հավաքել են ձեռագրեր, հնատիպ գրքեր, հայ գործիչների արխիվներ: 1870-ին բացվել է գրադարան (1880-ին՝ կից ընթերցարան): Գրադարանում տարբեր տարիներ աշխատել են Շիրվանզադեն և Լեոն: Գրադարանից և ընթերցարանից օգտվել են Բաքվի աշխատավորները, առանց ազգի և կրոնի խտրության (մոտ 32700 մարդ): 1914-ին գրադարանը ունեցել է 21800 գիրք, ստացել 68 անուն պարբերական: 1894-ին ստեղծվել է գրական ֆոնդ: Մ. ը. մասնակցել է Բաքվի հասարակական-քաղաքական կյանքին, ներկայացուցիչ ունեցել քաղաքային խորհրդում: Կառուցել է դպրոցներ, դրանք ապահովել գույքով և դասագրքերով: Օժանդակել է հայ ուսուցիչներին՝ ուսուցչական ցենզ ստանալու գործում: Նյութական օգնություն է ցույց տվել Ղուբայի, Գանձակի, Նուխիի, Շամախիի գավառների հայկ. դպրոցներին, Երևանի նահանգի, Կարսի մարզի, Ալեքսանդրապոլի գավառի գյուղացիներին՝ սերմացու ձեռք բերելու համար, Թավրիզի բնակիչներին, հրդեհից տուժած Զեյթունի հայերին և Էջմիածնի Գևորգյան ճեմարանին: 1899-ին Մ. ը. ունեցել է 500 անդամ: 1899-ին Ռուսաստանի ներքին գործերի մինիստր Ի. Լ. Գորեմիկինը հաստատել է Մ. ը-յան նոր կանոնադրությունը, որով այն զրկվում էր մշակութային և ուսումնական գործունեության իրավունքից: Այդ պատճառով Մ. ը. իր գումարների մի մասը նվիրաբերել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանին, Շուշիի հայոց հոգևոր դպրոցին և Բաքվի քաղաքային ինքնավարությանը: 1899—1912-ին Մ. ը. բարեգործական նպատակներով ծախսել է 369 847 ռ.: Այդ տարիներին բացվել և մինչև 1920-ը գործել են բարեգործական հիմնարկություններ (աշխատանքի տուն, մսուր, որբանոց), ճաշարան, լվացքատուն, խոհարարական դասընթացներ, կառուցվել տներ, որտեղ անվճար կամ մատչելի վճարով բնակվել են աղքատ ընտանիքներ (մոտ 200 հոգի): Մ. ը. նյութական օգնություն է ցույց տվել 1904—05-ի ռուս-ճապոնական պատերազմում վիրավորվածներին և զոհվածների ընտանիքներին, 1902-ին Շամախիի երկրաշարժից և 1904-ին ու 1910-ին Բաքվում խոլերայի համաճարակից տուժած բնակիչներին, 1908—11-ին Բաքվից Արևմտյան Հայաստան վերադարձող գաղթականներին: 1900—17-ին գործել է Մ. ը-յան թատրոնը՝ 420-տեղանոց դահլիճով (ելույթ են ունեցել Սիրանույշը, Ազնիվ Հրաչյան, Հ. Գ. Զարիֆյանը և ուրիշներ): 1913-ի հոկտեմբերին ցարական իշխանությունները վերականգնել են Մ. ը-յան մշակութային և ուսումնական գործունեության իրավունքը: 1914-ին Մ. ը. մասնաճյուղ է բացել Շամախիում: Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին (1914—18) Մ. ը. հավաքագրել է կամավորներ, վիրավորների համար բացել ամբուլատորիաներ, հիվանդանոցներ, ֆելդշերական կետեր, դրանք ապահովել բժշկական անձնակազմով և գույքով: 1914-ի հոկտեմբերին Մ. ը-յանը կից ստեղծվել է հայ կանանց կոմիտե, 1915-ին՝ գաղթականական կոմիտե: Գաղթականների համար բացվել է հիվանդանոց, որբանոց, տրամադրվել անվճար կացարան, սնունդ և հագուստեղեն: 1916-ին նպաստ է տրվել Անդրկովկասի հայ գյուղացիությանը օգնող հանձնաժողովին: Օգնություն է ցույց տրվել նաև այլազգի կարիքավորներին: 1918-ին կապ է հաստատել Բաքվի կոմունայի ղեկավարների (Ս. Շահումյան, Ա. Ջափարիձե) հետ, մասնակցել թուրք. բանակի դեմ Բաքվի պաշտպանությանը: Մ. ը-յան կազմում եղել են տարբեր քաղ. կուսակցությունների հարող անդամներ, սակայն նրա գործունեությունը ընդհանուր առմամբ եղել է առաջադիմական: 1920-ի մայիսին Մ. ը. դադարեցրել է գործունեությունը:

*Գրկ.* Գալստյան Ա., Պատմական համառոտ տեսություն Բաքվա Հայոց Մարդասիրական Ընկերության 26-ամյա գործունեության, Բաքու, 1891. *Գ. Սարգսյան*

**ՄԱՐԴԱՍՏԱՆ**, Մարդուցայք, Մարդոցեք, գավառ Մեծ Հայքի Վասպուրական նահանգում: Տեղադրվում է Մակու քաղաքից արմ., Կոտուրի (Վասպուրականի) լեռների արլ. ստորոտներում: Ըստ երևույթին գավառը Մ. է կոչվել այնտեղ բնակված Մարդ ցեղի անունով: Մինչև V դ. մտել է Մարդպետունիների տոհմի տիրույթների («Մարդպետականք»-ի) մեջ, ապա անցել է Արծրունիներին՝ պահպանելով նաև Մարդպետական անունը: IX դարից Մ. հիշվում է որպես Արծրունիների երկրորդական տոհմաճյուղերից մեկի (Ապուպելճի և իր շառավիղների) կալված: Նույն դարի վերջից Մ-ի Համբույրազան ավանը դարձել է եպիսկոպոսական կենտրոն: X դ. սկզբին այստեղ ճակատամարտ է տեղի ունեցել Վասպուրականի և Ատըրպատականի զորքերի միջև: 902-ին Վասպուրականը Գագիկ և Գուրգեն Արծրունիների միջև բաժանելիս գավառը մտել է Գագիկի տիրույթների մեջ: Վասպուրականի թագավորության անկումից (1021) հետո Մ. դարձել է Ատրպատականի, սելջուկյան թուրքերի, մոնղոլ-թաթարական և թուրքմեն. ցեղերի ասպատակությունների թատերաբեմ: 1502-ից մտել է Սեֆյան Իրանի կազմի մեջ:

*Գրկ.* Թովմա Արծրունի և Անանուն, Պատմություն Արծրունյաց տան, Ե., 1978:

**ՄԱՐԴԱՔՅԱՆԻ**, քաղաքատիպ ավան Ադրբեջանական ՍՍՀ-ում, Ապշերոնյան

թերակղզու հյուսիսային ափին, Բաքվի Ազիզբեկովյան շրջանում: 17 հզ. բն. (1975): Մերձծովյան կլիմայական առողջարան է: Բուժիչ միջոցները. օդա-արևա-ծովաբուժություն, խաղողաբուժություն: Մ-ում բուժվում են արյան շրջանառության, մարսողության, նյարդային համակարգի հիվանդություններով տառապողները:

**ՄԱՐԴԵՐ**, հնագույն ցեղ Իրանում և Հայաստանում: Մ-ի մասին առաջին հիշատակությունը պահպանվել է Վիդևդատում (մ. թ. ա. VII—VI դդ.): Մ. թ. ա. 546-ին Աքեմենյան Կյուրոս II թագավորի բանակում մասնակցել են Սարդեսի գրավմանը: Մ. թ. ա. V դ. վերջին, ըստ Քսենոփոնի, Մ. որպես վարձկան զինվորներ, Հայոց Որոնտես սատրապի բանակում դիմադրել են Հայաստանով նահանջող հուն. զորքին: Մ. Հայաստանում հիմնականում բնակվել են Վասպուրական նահանգում՝ Վանա լճից հվ-արլ., Մարդաստան գավառում: Ենթադրվում է, որ Մ. ցեղանունը ընկած է Մարդե բերդի, Մարդուցայք (Մարդաստան) և Մարդաղի գավառների անունների հիմքում: Պարթևական թագավորությունում Մ-ին հանձնարարվել է Կասպիական դռների հսկողությունը, որի համար Հրահատ I թագավորը (մ. թ. ա. 176—171) նրանց հատկացրել է «Կասպիական լեռան» ստորոտին գտնըվող Քարակ բնակավայրը: Տիգրան Բ Մեծի բանակում (մ. թ. ա. 68-ին) Մ-ի հեծյալ նետաձիգները մարտնչել են Հայաստան ներխուժած հռոմ. նվաճողների դեմ:

Մ. հետագայում ձուլվել են հայ ժողովրդին՝ հավանաբար հիմնելով *Մարդպետունիների* նախարարությունը:

*Գրկ.* Մ ա ն ա ն դ յ ա ն Հ., Երկ., հ. 1, Ե., 1977: Ե ր և մ յ ա ն Ս. Տ., Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, Ե., 1963: Վ ա ր դ ա ն յ ա ն Վ. Մ., Մարդերը Վասպուրականում, «ՊԲՀ», 1971, № 3: Դ ա ն ի ե լ յ ա ն Է. Լ., Մարդերի ցեղը Հին Հայաստանում, «ՊԲՀ», 1976, № 1: А д о н ц Н., Армения в эпоху Юстиниана, Е., 1971.

*Է. Դանիելյան*

**ՄԱՐԴ-ԺԱՄ**, աշխատաժամանակի հաշվառման միավոր: Արտահայտում է ծախսված աշխատանքի քանակը և աշխատաժամանակի կորուստը: Կատարված Մ-ժ. արտադրության մեջ մեկ մարդու փաստացի աշխատած ժամերի (սահմանված և այն գերազանցող՝ արտաժամ) թիվն է՝ առանց պարապուրդների, կերակրող մայրերի աշխատանքային և ներհերթափոխային այլ ընդմիջումների, ինչպես նաև դեռահասների արտոնյալ ժամերի:

**ՄԱՐԴԻՆ**, Մ ա ր տ ի ն, Մ ե ր տ ի ն, քաղաք Արևմտյան Հայաստանում, Դիարբեքիրի վիլայեթում (այժմ՝ Մարդինի վիլայեթի վարչական կենտրոնը): Ունի 33,6 հզ. բն. (1970): Կան սննդի, ցեմենտի ձեռնարկություններ: Մ. հին բերդաքաղաք է, որտեղ պահպանվել են բազմաթիվ շենքերի, ամրոցի և պարիսպների ավերակներ: Իտալացի ճանապարհորդ Մարկո Պոլոն (1254—1324) գրում է, որ Մ-ի շրջակայքում մշակում էին մեծ քանակությամբ բամբակ, որից պատրաստում էին բեհեզ և այլ գործվածքներ: 1914-ին ուներ 25 հզ. խառը բնակիչ, որոնցից 1500 հայեր, մնացածը՝ թուրքեր, ասորիներ, քրդեր, արաբներ են: Հայերն զբաղվում էին հիմնականում արհեստներով, առևտրով, ունեին 2 եկեղեցի ու դպրոց: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է բռնագաղթի ճանապարհին: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**«ՄԱՐԴԿԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ» ՏԵՍՈՒԹՅՈՒՆ**, բուրժուական էմպիրիկ սոցիոլոգիայի (էկոնոմիկայի, արդյունաբերության և աշխատանքի սոցիոլոգիայի) շրջանակներում առաջացած ուսմունք, որն, ի հակադրություն *թեյլորիզմի*, արտադրության ոլորտում հարաբերությունները հանգեցնում է զուտ մարդկային՝ գաղափարական, հոգեբանական, բարոյական հարաբերությունների: Ստեղծվել է ԱՄՆ-ում, XX դ. 20-ական թթ. (Ֆ. Ջյոթլիսբերգեր, Ե. Մեյո), հետագայում տարածվել Արևմտյան Եվրոպայի երկրներում: «Մ. հ.» տ. արտադրական կոլեկտիվները դիտում է որպես սոցիալական խումբ՝ բնորոշ խմբային շահերով, նպատակներով ու դրդապատճառներով, որոնք կարող են լինել թե՛ դրական, թե՛ բացասական՝ դառնալ գործադուլի կամ արտադրական նորմաների գերակատարման պատճառ: Բոլոր դեպքերում կոլեկտիվ գործունեության նպատակը անհատի մարդկային (ստեղծագործական և հոգևոր) պահանջների բավարարումն է:

«Մ. հ.» տ. արտացոլում է արդի կապիտալիզմին բնորոշ հակասությունները, սակայն դրանց վերագրում սոցիալ-հոգեբանական բնույթ: Ըստ «Մ. հ.» տ-յան հակասությունները կարելի է չեզոքացնել սոցիալական միջոցառումների շնորհիվ և հասնել աշխատանքի արտադրողականության նկատելի աճի, դասակարգային համագործակցության և սոցիալական ներդաշնակության: Գործնականում «Մ. հ.» տ. պահանջում է ուսումնասիրել բոլոր արտադրական բջիջների աշխատանքի սոցիալ-հոգեբանական պայմանները, ղեկավարի և ստորադասի փոխհարաբերությունները՝ և բարելավելու նպատակով: Առաջարկվում է նաև միջոցառումների անհրաժեշտ ցանկ, որը նպաստում է կապիտալիստական արտադրության արդյունավետ ղեկավարմանը: Աշխատանքի «մարդկայնացման» նշանաբանի ներքո հետապնդվում է արտադրության շահութաբերությունը:

*Ա. Առիբեկյան*

**«ՄԱՐԴ-ՄԵՔԵՆԱ» ՀԱՄԱԿԱՐԳ**, մարդուց (օպերատորից) և մեքենայից բաղկացած համակարգ, որի միջոցով իրականացվում է նյութական բարիքների արտադրության, ինֆորմացիայի մշակման, կառավարման և այլ օպերացիաների հետ կապված աշխատանքային գործունեությունը: «Մ-մ.» հ-ում մարդու աշխատանքային գործունեության հիմքում ընկած է նրա փոխազդեցությունը աշխատանքի առարկայի (կառավարման օբյեկտի) և մեքենայի հետ՝ կառավարման օրգանների միջոցով: «Մ-մ.» հ-ի ուսումնասիրման անհրաժեշտությունը պայմանավորված է նրանով, որ լայն տարածում են ստացել այնպիսի համակարգեր (արտադրության, տրանսպորտի, կապի, տիեզերական թռիչքների կառավարման), որոնց արդյունավետությունը կախված է համակարգերում ընդգրկվող մարդու գործունեությունից և այն հանգամանքից, թե համակարգի ստեղծման ժամանակ ինչ չափով են բացահայտվել ու հաշվի առնվել մարդու և մեքենայի առանձնահատկությունները, այդ թվում նաև սահմանափակումները և պոտենցիալ հնարավորությունները: «Մ-մ.» հ-ի կառուցման կարևորագույն խնդիրը օպերատորի և տեխ. միջոցների միջև ֆունկցիաների ճիշտ բաշխումն է: Տարբերում են ֆունկցիաների բաշխման երկու եղանակ. առաջին դեպքում մարդը միայն հսկում է խնդրի լուծման մեքենայական պրոցեսը և հաստատում լուծումը, երկրորդ դեպքում մի շարք օպերացիաներ մարդն ու մեքենան կատարում են համատեղ: Այս երկու տարբերակներից որևէ մեկի ընտրությունը կատարվում է ելնելով մեթոդաբանական նկատառումներից (մարդու՝ որպես աշխատանքի սուբյեկտի սոցիալական դերից և կառավարման մասին գիտության և *ինժեներական հոգեբանության* տվյալներից):

«Մ-մ.» հ-ի ուսումնասիրումը պահանջում է գիտության զանազան բնագավառների հետազոտությունների արդյունքների միավորում:

*Մ. Ավետիսյան*

**ՄԱՐԴՊԵՏՈՒՆԻՆԵՐ**, նախարարական տոհմ Արշակունյաց Հայաստանում: Ենթադրվում է, որ սերել են *Մարդերի* ցեղից: Արքունիքում ժառանգաբար վարել են մարդպետության գործակալությունը: Մ-ի իրավասությանը ենթակա էին Հայոց թագավորի կանանոցի և արքունիքի վերակացությունը, արքունի ամրությունների, բերդերի, գանձերի, կալվածների, հանդերձարանի պահպանությունն ու հսկողությունը: Հիշվում են «Հայր», «Հայր թագավորի», իրենց պաշտոնը՝ «Հայրություն» անուններով: Համալրել են նաև արքունի պահակազորը: Վարել են կենտրոնախույս նախարարությունների թուլացման, հնազանդեցման, արքունի կալվածների ընդարձակման քաղաքականություն, պայքարել կաթողիկոսի իշխանության, եկեղեցական աճող հողատիրության դեմ: Սատարելով Արշակունիներին՝ Մ. ձգտել են ընդլայնել իրենց տիրույթները և քաղ. ազդեցությունը: Մ-ի տիրույթները հիմնականում եղել են *Մարդաստան* և, ըստ երևույթին, նաև *Մարդաղի* գավառները: Տոհմն ունեցել է իր եպիսկոպոսը: Նախարարությունների ներքին պառակտումները, ինչպես նաև հայ Արշակունիների անկումը պայմանավորել են Մ-ի թուլացումը և նրանց վարած գործակալության վերացումը (V դ. սկիզբ): Մ. այնուհետև ենթարկվել են Արծրունիներին՝ թերևս դառնալով նրանց երկրորդական ճյուղերից մեկը: Արծրունիները, տիրելով Մ-ի կալվածները, յուրացրին նաև նրանց տիտղոսը (Ղազար Փարպեցին 451-ի ազատագրական շարժման մասնակից Ներշապուհ Արծրունուն անվանում է «Մարդպետ», «Գիրք թղթոց»-ում Մարդպետական և Արծրունի եպիսկոպոսները նույն անձն են նն):

*Գրկ.* Մ ա ն ա ն դ յ ա ն Հ., Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, Ե., 1934:

*Վ. Վարդանյան*

**«ՄԱՐԴ-ՏԵԽՆԻԿԱ» ՀԱՄԱԿԱՐԳ**, մարդու և աշխատանքի տեխնիկական միջոցների ֆունկցիոնալ միասնությունը բնութագրող փիլիսոփայական-սոցիոլոգիական հասկացություն: Օգտագործվում է նաև «հոմոտեխնիկական ավտոմատ» անվանումը, նկատի ունենալով, որ աշխատանքային գործունեության նպատակի իրագործումը հնարավոր է միայն մարդու և տեխնիկայի փոխլրացմամբ: «Մ-տ.» հ-ում ֆունկցիաների բաշխումը թույլ է տալիս առանձնացնել տեխնիկայի զարգացման որակական փուլերը (ձեռքի գործիք, մեքենա, ավտոմատ), վերաբաշխման պրոցեսը որակավորել իբրև համընդհանուր տեխ. հեղափոխություն, իսկ ըստ մարդուն բաժին ընկնող ֆունկցիաների (արտադրությունում մարդու տեխնոլոգիական դերի)՝ գնահատել մարդկային զարգացման օբյեկտիվ հնարավորությունները: «Մ-տ.» հ-ի զարգացման հիմնական օրինաչափությունն է մարդկանց աշխատանքային ֆունկցիաների աստիճանական փոխանցումը տեխ. միջոցներին, մարդու արտամղումը բուն տեխնոլոգիական պրոցեսից դեպի արտադրության ընդհանուր կառավարման և կատարելագործման ոլորտը (տես *Արտադրության ավտոմատացում*): «Մ-տ.» հ-ի հիմնական պրոբլեմներն են. ա. մարդու այս կամ այն ֆունկցիան տեխնիկային փոխանցելու (առարկայացնելու) հնարավորությունը. բ. նման փոխանցման նպատակահարմարությունը. գ. մարդու և տեխնիկայի փոխհարաբերությունը: Այս պրոբլեմները, հատկապես, «արհեստական ինտելեկտի» ստեղծումը, մարդու և էլեկտրոնային հաշվիչ մեքենայի հաղորդակցումը, մարդու և մեքենայի համատեղ գործունեության օպտիմալացումը ևն ունեն ընդհանուր գիտական նշանակություն (տես *Էրգոնոմիկա*, *«Մարդ-մեքենա» համակարգ*, *Ինժեներական հոգեբանություն*): Կ. Մարքսը կանխատեսել է «Մ-տ.» հ-ի բարձրագույն փուլը, երբ «...կդադարի այնպիսի աշխատանքը, որի դեպքում մարդն ինքն է անում այն, ինչը նա կարող է ստիպել իրերին անելու իր՝ մարդու համար» (Маркс К. и Энгельс Ф., Соч., 2 изд., т. 46, ч. 1, с. 280): Մարքսիստական սոցիոլոգիան մերժում է արմ. տեխնատյացների մռայլ կանխատեսումները սեփական տեխ. միջոցներով մարդու անխուսափելի ստրկացման մասին, ինչպես և նեոհեդոնիստական տրամադրությունները՝ կապված «ժամանցի քաղաքակրթության» գալստյան հետ:

*Գրկ.* Товмасян С. С., Философские проблемы труда и техники, М., 1972; Социально-философские проблемы «человеко-машинных» систем, «Вопросы философии», 1979, № 2—4.

*Վ. Միրզոյան*

**«ՄԱՐԴՈՒ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅԱՆ» ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ԴՊՐՈՑ**, աշխարհագրական դպրոց Ֆրանսիայում, որ ճանաչում գտավ XIX դարի վերջին և XX դարի 1-ին կեսին: Ներկայացուցիչները (Պ. Վիդալ դը լա Բլաշ, Է. Մարտոն, Ժ. Բրյուն, Լ. Գալուա և ուրիշներ) աշխարհագրության խնդիրը սահմանում էին իբրև բնության և մարդու փոխհարաբերության ուսումնասիրում՝ շեշտելով մարդու գործունեության տարբեր ձևերի վրա աշխարհագրական միջավայրի ունեցած ազդեցությունը, նրա «ապրելակերպը»: Սոցիալական զարգացման օրենքներն այս դպրոցի ներկայացուցիչների հետազոտություններում դուրս էին մնում, միաժամանակ նրանց աշխատանքներն ունեն բնագիտական, ազգագրական բնույթի փաստական հարուստ նյութ և աչքի են ընկնում պատկերավոր շարադրմամբ:

**ՄԱՐԴՈՒ ԵՎ ՔԱՂԱՔԱՑՈՒ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԻ ԴԵԿԼԱՐԱՑԻԱ**, ֆրանսիական մեծ հեղափոխության ծրագրային փաստաթուղթ, որը հռչակեց նրա հիմնական սկզբունքները՝ ժողովրդական գերիշխանություն և մարդու անկապտելի բնական իրավունքները: Ընդունվել է 1789-ի օգոստ. 26-ին, Սահմանադիր ժողովում: Դեկլարացիան (պարունակում էր 17 հոդված) ազդարարում էր, որ մարդու բնական և անկապտելի իրավունքներն են ազատությունը, սեփականությունը, անվտանգությունը և դիմադրությունը ճնշմանը, օրենքի առաջ բոլոր քաղաքացիների հավասարությունը, անձի, խղճի, խոսքի ազատությունը, հարկերի հավասարաչափ բաշխումը բոլոր քաղաքացիների միջև ևն: Դեկլարացիան ֆեոդալական բացարձակ միապետական կարգերի դեմ պայքարի դրոշ դարձավ ոչ միայն Ֆրանսիայում, այլև ուրիշ երկրներում: Սակայն խոշոր բուրժուազիան դեկլարացիայի դեմոկրատական սկզբունքների մեջ մտցրեց սեփական դասակարգային սահմանափակ բովանդակությունը, որն արտահայտվեց 1791-ի սահմանադրությամբ նախատեսված ընտրական ցենզով, ֆրանս. գաղութներում ստրկության պահպանմամբ ևն: Դեկլարացիայի դեմոկրատական սկզբունքները մասնակիորեն իրականացվեցին միապետության տապալումից (1792-ի օգոստ. 10), հանրապետության հռչակումից (1792-ի սեպտ. 22) հետո և մասնավորապես *յակոբինյան դիկտատուրայի* (1793-ի հունիսի 2—1794-ի հուլիսի 27/28) ժամանակ: 1793-ին ընդունված Մ. և ք. ի. դ. ավելի դեմոկրատական էր (ավելացվել էին հանրագրերի, ժողովների իրավունքի, ժողովրդի իրավունքները խախտող կառավարության դեմ ապստամբելու իրավունքի ևն հոդվածները): Չնայած այդ ամենին երկրում պահպանվում էր բանվորների ու բատրակների սոցիալական իրավազրկությունը:

*Գրկ.* Французская буржуазная революция 1789—1794, под ред. В. П. Волгина и Е. В. Тарле, М.—Л., 1941, гл. 3.

**«ՄԱՐԴՈՒ ԵՎ ՔԱՂԱՔԱՑՈՒ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԻ ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆ»** («La Société des droits de l'homme et de citoyen»), դեմոկրատական ընկերություն, որ գործել է Ֆրանսիայում, 1848-ի հեղափոխության ժամանակ: Ընկերությունն ուներ սեկցիաներ, որոնցում համախմբված էին առաջավոր մանրբուրժուական դեմոկրատները: Միավորում էր ավելի քան 3 հզ. մարդ: Սերտ կապեր էր պահպանում Փարիզի և գավառների քաղ. ակումբների հետ: Ընկերության խնդիրն էր երկրի հասարակական և պետ. կառուցվածքի դեմոկրատացումը, «հավասարության, համերաշխության և եղբայրության» սկզբունքներով դեմոկրատական ազատությունների ամրապնդումը ևն: Ընկերության անդամները կողմ էին հակահեղափոխության դեմ զինված պայքարին: 1848-ի հունիսյան ապստամբության պարտությունից հետո դադարել է գործելուց:

*Հ. Լիլոյան*

**ՄԱՐԴՈՒԿ**, Բ ե լ - Մ ա ր դ ու կ, սկզբում Բաբելոն քաղաքի հովանի աստվածը, մ. թ. ա. XVIII դարից՝ Բաբելոնիայի թագավորության գլխավոր աստվածը: Միջագետքի սեմական ցեղերն ու ժողովուրդները Մ. կամ Բել («տեր») են անվանել Շումերի Էնլիլ աստծուն: Ըստ առասպելի, Մ. եղել է իմաստության աստծո՝ Հայայի (Էա, Էնկի) որդին: Աստվածների խորհրդում իբր ճանաչվելով «գերագույն»՝ Մ. պայքարել է հրեշների ու քաոսի աստվածների դեմ, մենամարտում սպանել նրանց առաջնորդ Տիամատին՝ նրա վիթխարի դիակից կերտելով երկինքն ու երկիրը, իսկ մատնիչ ու խռովարար Կինգո աստծո արյունը խառնելով կավին, ստեղծել է մարդկանց՝ ի ծառայություն աստվածների: Նոր Բաբելոնյան թագավորության հիմնադրումից (մ. թ. ա. VII դ. վերջին քառորդ) հետո, երբ նրա միապետները Միջագետքում ստեղծել են կենտրոնացված հզոր տիրակալություն, Մ-ի պաշտամունքում դրսևորվել է միաստվածության միտում: Տեղական բոլոր հին աստվածությունները հռչակվել են Մ-ի տարբեր մարմնավորումների դրսևորումներ (նա կրել է շուրջ 50 աստվածների անվանում): Այսպես, Նինուրտան խորհրդանշել է Մ-ի հզորությունը, Ներգալը՝ մարտը, Էնլիլը՝ իշխանությունը ևն: Մ-ի սրբազան կենդանին համարվել է Բաբելոնի վիշապը, երկնային լուսատուն՝ Յուպիտերես մոլորակը, շաբաթվա օրը՝ հինգշաբթին, կինը՝ սիրո և գեղեցկության դիցուհի Իշտարը: Մ-ի և աշխարհի արարչագործության (տիեզերակերտության) հիշատակը մեծահանդես արարողություններով տոնվել է յուրաքանչյուր նոր տարվա սկզբին, Բաբելոն քաղաքում, Մ-ի գլխավոր մեհյանում՝ Էսագիլու տաճարում:

*Գրկ.* Белявский В. А., Вавилон легендарный и Вавилон исторический, М., 1971; Dhorme E., Les relegions de Babylonie et d' Assyrie, 2 éd., P., 1959.

**ՄԱՐԴ-ՕՐ**, աշխատաժամանակի հաշվառման միավոր: Կատարված է համարվում, եթե աշխատողը ներկայացել է գործատեղ, անկախ այդ օրը նրա աշխատած ժամերի (լրիվ, ոչ լրիվ, արտաժամ) թվից: Ներառում է՝ ա. ձեռնարկությունում փաստացի աշխատած, բ. տվյալ ձեռնարկության կարգադրերով, բայց ձեռնարկությունից դուրս աշխատանք կատարող, ինչպես նաև գործուղված, գ. հիմնական աշխատանքում պարապուրդի պատճառով այլ աշխատատեղերում օգտագործված և դ. հանգստյան ու տոն օրերին արտաժամ աշխատողների Մ-օ-երը:

**ՄԱՐԵ** (Marées) Հանս ֆոն (1837—1887), գերմանացի նկարիչ: Սովորել է Բեռլինում, Կ. Շտեֆեկի մոտ (1854—55): 1864—1870-ին և 1873-ից ապրել է Իտալիայում: Իտալ. Վերածննդի արվեստի ազդեցությամբ ստեղծել է մոնումենտալ-դեկորատիվ գունանկարներ (Նեապոլի Կենդանաբանական կայանի որմնանկարները,



Հ. ֆ ո ն Մ ա ր ե. «Զկնորսները ծովում», Նեապոլի կենդանաբանական կայանի գրադարանի որմնանկար (1873—74)

1873—74): Մ. ձգտել է այլաբանական կերպարներով մարմնավորել մարդկության «ոսկե դարի» մասին երազանքները («Ոսկե դար», 2 տարբերակ, 1879—85, Նոր պատկերասրահ, Մյունխեն): Ուշ շրջանի դիցաբանական թեմաներով նրա սյուժե-եռանկարներն իրենց կառուցվածքային և այլ առանձնահատկություններով կանխորոշեցին *«մոդեռն»* գեղանկարչությունը: Միաժամանակ գեղարվեստական իդեալի ձգտումը Մ-ի գործերին հաղորդել են սառը վերացականության տարրեր («Պարիսի դատը», 1880—81, Ազգային թանգարան, Բեռլին):

**ՄԱՐԵՇԱԼ** (Maréchal) Պիեռ Սիլվեն (1750—1803), ֆրանսիացի քաղաքական գործիչ, փիլիսոփա, գրող: Մ. հեղափոխական կողմնորոշվածությամբ աթեիստական մատերիալիզմը համակցել է հավասարրդական կոմունիզմի հետ: *Դիրեկտորիայի* ընթացքում հակվել է Գ. *Բաբյոֆի* գլխավորած «հանուն հավասարության» շարժմանը, գրել «Հավասարների մանիֆեստ»-ի առաջին տարբերակը, պամֆլետներ, «Ֆրանսիացի Լուկրեցիոսը» (1797), հակակրոնական պոեմ՝ «Պյութագորասի ճանապարհորդությունը» (հ. 1—6, 1799) վեպը: «Հին և նոր աթեիստների բառարան» (1800) աշխատության մեջ պրոպագանդել է աթեիզմը և կոմունիստական իդեալները:

*Երկ.* Избранные атеистические произведения, вступ. ст. X. Н. Момджяна, М., 1958.

*Գրկ.* М о м д ж я н X. Н., Сильвен Марешаль, «Տեղեկագիր ՀՍՍՀ ԳԱ, հաս. գիտ.», 1944, № 1—2; О б л о м и е в с к и й Д., Литература французской революции 1789—1794 гг., М., 1964.

**ՄԱՐԵՍԵՎ** Ալեքսեյ Պետրովիչ (ծն. 1916), օդաչու, մայոր, Սովետական Միության հերոս (24.8.1943): ՍՄԿԿ անդամ 1944-ից: 1941—45-ի Հայրենական մեծ պատերազմի ժամանակ եղել է կործանիչ ինքնաթիռների գնդի օդակի հրամանատար, գնդի հրամանատարի օգնական, գնդի շտուրման: 1942-ի մարտին Մ-ի ինքնաթիռը մարտում խփվել է: Ծանր վիրավոր Մ. հարկադրական վայրէջք է կատարել թշնամու տերիտորիայում և 18 օր սողալով՝ հասել ռազմաճակատի գծին: Երկու սրունքների անդամահատումից հետո հարմարվելով պրոթեզներին՝ Մ. իր իսկ խնդրանքով, 1943-ի մայիսին ուղարկվել է կործանիչ ավիացիայի 63-րդ գվարդիական գունդ: Օդային մարտերում խփել է թշնամու 7 ինքնաթիռ: Մ-ի սխրանքը նկարագրված է Բ. *Պոլևոյի* «Պատմություն իսկական մարդու մասին» գրքում: 1952-ին ավարտել է կուսակցական բարձրագույն դպրոց: 1956-ի սեպտեմբերից Պատերազմի վետերանների սովետական կոմիտեի պատասխանատու քարտուղարն է: Պարգևատրվել է Լենինի, Հոկտեմբերյան հեղափոխության, Կարմիր դրոշի, Աշխատանքային կարմիր դրոշի, Կարմիր աստղի շքանշաններով:

**ՄԱՐԵՐ**, մ ե ղ ա ց ի ն ե ր, հնագույն ժողովուրդ Իրանական բարձրավանդակում, տես *Մարաստան*:

**ՄԱՐԵՐԻ**, հայկական հեթանոսական տոմարի 10-րդ ամսվա անունը: Մ-ի 1-ը համապատասխանում է մայիսի 8-ին:

**ՄԱՐԵՑԿԱՅԱ** Վերա Պետրովնա [18(31).7. 1906, Մոսկվա —17.8.1978, Մոսկվա], ռուս սովետական դերասանուհի: ՍՍՀՄ ժող. արտիստուհի (1949): 1924-ին ավարտել է Ե. Վախթանգովի անվ. թատրոնի դպրոցստուդիան և ընդունվել Յու. Զավադսկու ստուդիան: 1940-ից՝ Մոսսովետի անվ. թատրոնի դերասանուհի: Լավագույն դերերից են՝ Գլաֆիրա (Ա. Օստրովսկու «Գայլեր և ոչխարներ»), Միրանդոլինա (Գոլդոնիի «Հյուրանոցի տիրուհին»), Ժիվկա (Բ. Նուշիչի «Տիկին մինիստրուհին»), Միսիս Սևիջ (Ջ. Պատրիկի «Տարօրինակ միսիս Սևիջը»): 1925-ից նկարահանվել է կինոյում (Նատալյա Սոկոլովա, «Կառավարության անդամը», Պրասկովյա, «Նա պաշտպանում է հայրենիքը», Վարվառա, «Գյուղական ուսուցչուհին», Նիլովնա, «Մայրը» ևն): Արժանացել է ՍՍՀՄ պետ. մրցանակների (1942, 1946, 1948, 1951):



Վ. Պ. Մ ա ր ե ց կ ա յ ա ն Լիզայի դերում (Գրիբոյեդովի «Խելքից պատուհաս»)

**ՄԱՐԶ**, 1. վարչա-տերիտորիալ միավոր ՍՍՀՄ-ում (և նախահեղափոխական Ռուսաստանում), ինչպես նաև արտասահմանյան մի շարք երկրներում: 1979-ի հունվ. 1-ին ՍՍՀՄ-ում կար 121 մարզ:

2. Տոպոլոգիայի հիմնական հասկացություններից մեկը (օրինակ, հարթության վրա շրջան, շերտ, կիսահարթություն ևն):

3. Ֆիզիկա-աշխարհագրական շրջանացման միավոր, ֆիզիկա-աշխարհագրական երկրի մաս, որը միավորում է հասակով և ծագումով իրար մոտիկ լանդշաֆտները: Առանձնացվում են տեկտոնական շարժումների, ծովային տրանսգրեսիաների և ազոնալ այլ գործոնների ազդեցությամբ:

**ՄԱՐԶԱԴԱՇՏ**, ս տ ա դ ի ո ն, մարզական բացօթյա կառույցների համալիր, որը խմբավորվում է ֆուտբոլի դաշտից, վազքուղուց, թեթև աթլետիկական և մարմնամարզական հրապարակներից բաղկացած, մեկ կամ մի քանի կողմից հանդիսականների տրիբունաներով եզրված սպորտային միջուկի շուրջը: Առաջին Մ-երը (ստադիոնները) ստեղծվել են Հին Հունաստանում՝ Օլիմպոսում (մ. թ. ա. VII դ.), Դելփիքում (VI—V դդ.), Աթենքում (մ. թ. ա. IV դ.)]: *Օլիմպիական խաղերի* վերսկսումը (1896) նոր զարկ է տվել Մ-երի շինարարությանը: Արդի Մ-երը բարդ և տեխնիկապես հագեցված կառույցներ են՝ մարզիկի և հանդիսականի սպասարկման բոլոր հարմարություններով (հանդերձարան, ցնցուղարան, մասաժային, բուժական և հանգստի սենյակներ, տրիբունաներ, ճեմասրահներ, բուֆետներ ևն): Հայտնի են Լոնդոնի (1908), Ստոկհոլմի (1912), Փարիզի (1924), Չիկագոյի (1926), Ամստերդամի (1928), Պրագայի (1928), Լոս Անջելեսի (1932), Բեռլինի (1936), Հելսինկիի (1952), Հռոմի (1956), Բարսելոնի (1958), Ռիո դե Ժանեյրոյի (1960), Մեխիկոյի (1968), Տոկիոյի (1972) ևն Մ-երը: ՍՍՀՄ-ում լավագույններից են. Լենինգրադում՝ Կիրովի անվ. (1952), Մոսկվայում՝ Լենինի անվ. (1956), Երևանի, Կիևի, Բաքվի, Թբիլիսիի, Տաշքենդի Մ-երը:



Երևանի «Հրազդան» մարզադաշտը (1971, ճարտ-ներ՝ Կ. Հակոբյան, Գ. Մուշեղյան)

Հին և միջնադարյան Հայաստանում Մ-եր կառուցվել են առանձին՝ բաց հրապարակների ձևով և օգտագործվել են թե՛ մարզական, թե՛ զորավարժությունների նպատակով (տես *Ասպարեզ*): Նման մրցասպարեզներ են եղել Բագավանում (Դիցավանում), Զարեհավանում (Ծաղկոտն գավառում), Վանում, Վաղարշապատում, Դվինում, Գառնիում, Հերում, Անիում, Կիլիկիայի քաղաքներում: Հայկ. ՍՍՀ-ում կառուցվել են բազմաթիվ Մ-եր, լավագույնը Երևանի «Հրազդանն» է՝ 70 հզ. հանդիսատեղով (1971, ճարտ-ներ՝ Կ. Հակոբյան, Գ. Մուշեղյան, կոնստրուկտոր՝ Է. Թոռոսյան):

*Գրկ.* Տ ի գ ր ա ն յ ա ն Է. Ա., Հասարակական շենքերի ճարտարապետական նախագծման հիմունքները, Ե., 1973, էջ 185—224:

*Մ. Միքայելյան*

**ՄԱՐԶԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ**, մարզիկներ և մարզական կյանքով հետաքրքրվողներ միավորող հասարակական կամ մասնավոր կազմակերպություն: Մ. ա-ները լինում են ս ի ր ո ղ ա կ ա ն (բյուջեն ստեղծվում է արհմիութենական հատկացումներից, օգտագործման տրվող մարզակառույցների համար ստացվող վարձավճարից, անդամավճարներից) և պ ր ո ֆ ե ս ի ո ն ա լ (ֆինանսավորում են խոշոր ձեռնարկատերերը, բաժնետիրական ընկերությունները. դրանք ըստ էության պրոֆեսիոնալ սպորտի առևտրական ձեռնարկություններ են):

ՍՍՀՄ-ում գոյություն ունի Մ. ա-ների 3 տիպ. արհմիութենական (արդ. ձեռնարկությունների, գյուղատնտ. հիմնարկների և ուսումնական հաստատությունների բարձր նվաճումների հասած ֆիզկուլտուրային կոլեկտիվներ մտնում են համապատասխան մարզական ընկերությունների մեջ), զինված ուժերի (ԲՍԱ, ՍՍՀՄ պաշտպանության մինիստրության ինքնուրույն զինվորական հիմնարկներ) և ԴՕՍԱԱՖ-ի (ավտոմոտո-, ռադիո-, հրաձգային, ծովային, ավիա- և այլ ակումբներ, համարվում են ուսումնա-մարզական կազմակերպություններ):

Հայտնի են «Ուրալմաշ»-ը (Սվերդլովսկ), «Տորպեդո»-ն (Մոսկվա), «Մետալուրգ»-ը (Զապորոժիե), «Զարյա»-ն (Վորոշիլովգրադ), «Արաքս»-ը (Երևան), «ՎԵՖ»-ը (Ռիգա), ԲԿՄԱ-ն, Ռոստովի, Լենինգրադի, Խաբարովսկի ԲՄԱ-ները, ՍՍՀՄ կենտրոնական ավտոմոտո-, Չկալովի անվ. ավիա- և այլ ակումբներ: Սոցիալիստական երկրների Մ. ա-ներից են «Դուկլա»-ն, «Շկոդա»-ն (Չեխոսլովակիա), «Գուռնիկ»-ը (Լեհաստան), «Ռապիդ»-ը (Ռումինիա), «Ցրվենա զվեզդա»-ն, «Պարտիզան»-ը (Հարավսլավիա), «Վաշաշ»-ը, «Ֆերենցվարոշ»-ը (Հունգարիա), «Սլավիա»-ն (Բուլղարիա), «Ֆորվերտս»-ը (ԳԴՀ) են: Կապիտալիստական երկրներում լայն տարածում ունեն պրոֆեսիոնալ ակումբները: Հնագույններից են «Արսենալ»-ը, «Սելթիկ»-ը (Մեծ Բրիտանիա), «Մյունխեն»-ը, «Համբուրգ»-ը (ԳՖՀ), «Սանթոս»-ը (Բրազիլիա), «Միլան»-ը (Իտալիա) են: Գործում են նաև մունիցիպալ, համալսարանական, բանվորական և այլ սիրողական Մ. ա-ներ:

**ՄԱՐԶԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐ**, մասնագիտացված ուսումնա-դաստիարակչական հիմնարկներ, որոնք պատրաստում են բարձր որակավորման մարզիկներ: ՍՍՀՄ-ում Մ. դ. ստեղծվում են լուսավորության ու հաղորդակցության ճանապարհների մինիստրությունների, արհմիությունների, ֆիզկուլտուրայի ու սպորտի կոմիտեների և այլ կազմակերպությունների համակարգում և լինում են 3 տեսակի. մանկապատանեկան մարզական դպրոցներ (ՄՊՄԴ), օլիմպիական ռեզերվի մասնագիտացված Մ. դ. և մարզական բարձրագույն վարպետության դպրոցներ (ՄԲՎԴ): Առաջին մանկական մարզական դպրոցը բացվել է 1934-ին, Մոսկվայում, 1940-ին ՍՍՀՄ-ում կար 262 ՄՊՄԴ, 1977-ին՝ ավելի քան 6000 Մ. դ., այդ թվում՝ 5400 ՄՊՄԴ, 600 օլիմպիական ռեզերվների և 71 ՄԲՎԴ:

Հայաստանում գործում են պատանի մարմնամարզիկների, բռնցքամարտիկների, հնգամարտիկների, ֆուտբոլիստների, շախմատիստների, ըմբիշների, մարզական պարերի, գեղարվեստական մարմնամարզության, մարզական վարպետության բարձրացման դպրոցներ՝ շրջկենտրոններում բացված մասնաճյուղերով: Երևանում կա նաև մարզական թեքումով միջնակարգ դպրոց (№ 10): Մարզիչ-մանկավարժներից միջազգային ճանաչում ունեն Հ. Շահինյանը, Ա. Ազարյանը, Վ. Ենգիբարյանը, Ի. Նովիկովը, Հ. Գասպարյանը, Ն. Մուշեղյանը, Ա. Ազնավուրյանը և ուրիշներ:

Որոշ սոցիալիստական երկրներում տարածված են գիշերօթիկ Մ. դ. (կրթության և մարզաձևերի ուսուցման միասնությամբ), կապիտալիստական երկրներում, որպես կանոն, Մ. դ. ստեղծվում են *մարզական ակումբներին* կից:

**ՄԱՐԶԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, աշխատավորների և սովորող երիտասարդության մարզական կամավոր մասսայական միավորումներ, որոնք նպաստում են ֆիզիկական կուլտուրայի, սպորտի և տուրիզմի զարգացմանը: Գործում են համամիութենական 7 («Բուրեվեստնիկ» «Վոդնիկ», «Դինամո», «Զենիթ», «Սպարտակ», «Լոկոմոտիվ», «Աշխատանքային ռեզերվներ»), հանրապետական 30 (որից 15-ը միավորում են արդ. ձեռնարկությունների, 15-ը՝ գյուղական ֆիզկուլտուրային կոլեկտիվները): Խոշորագույններից են «Տրուդը»-ը՝ ՌՍՖՍՀ-ում, «Ավանգարդ»-ը՝ Ուկրաինայում, «Սևան»-ը և «Աշխատանք»-ը՝ Հայաստանում են: Արտասահմանյան երկրներում (այդ թվում՝ և սոցիալիստական) տարածված են *մարզական ակումբները*:

**ՄԱՐԶԱԿԱՆ ԺԱՅՌԱՄԱԳԼՑՈՒՄ**, *ալպինիզմի* ձև: ՍՍՀՄ-ում սկզբնավորվել է 1930-ական թթ.: Համամիութենական առաջնությունները անց են կացվում 1947-ից, Ղրիմում կամ Կրասնոյարսկի մոտակայքում (մինչև 100 *մ* բարձրության թեք ժայռերի վրա, փոքր մասշտաբի մրցությունները՝ ցանկացած բարձրության ժայռերի վրա): Ծրագիրն ընդգրկում է. անհատական (առանց հարմարանքի) և թիմային (երկու փոխներգործող մարզիկ՝ հատուկ հանդերձանքով ու հարմարանքներով) մրցումներ: Մ. ժ. 1966-ից մտնում է համամիութենական միասնական մարզական դասակարգման մեջ: Տարածված է ՉՍՍՀ-ում, ԼԺՀ-ում, ԲԺՀ-ում են: ՀՍՍՀ-ում անց են կացվում հանրապետական, համամիութենական մրցումներ:

**ՄԱՐԶԱԿԱՆ ԿԱՌՈՒՅՑՆԵՐ**, առանձին շենքեր և համալիր կառույցներ, որոնք նախատեսված են կազդուրիչ և ուսումնամարզական պարապմունքների, տարբեր մարզաձևերի մրցումների համար: Մ. կ-ի նախատիպ են անտիկ *պալեստրաներն* ու *գիմնասիոնները*, *ստադիոնները*, *ձիարշավարաններն* ու *կրկեսները*: Հին Հռոմի ամֆիթատրոններում արտահայտվեց ստադիոնի ու կրկեսի միավորման գաղափարը, իսկ հին հուն. պալեստրաների տաքացվող ջրով լողարաններն իրենց զարգացումն ստացան հին հռոմ. *թերմերում*: Քրիստոնեության տարածումով, որը մերժում էր ներդաշնակ զարգացած մարդկային մարմնի պաշտամունքը, Մ. կ-ի շինարարությունը փաստորեն դադարեց և վերսկսվեց միայն XIX դ.: 1828—30-ին կառուցվեցին առաջին արհեստական լողավազանները, իսկ դարավերջին՝ մարմնամարզական դահլիճները: Մ. կ-ի շինարարության ծավալմանը նպաստեց *օլիմպիական խաղերի* վերածնունդը (1896): Ժամանակակից Մ. կ. սպասարկում են ավելի քան 50 մարզաձևերի: Բաղկացած են հիմնական (մարզասրահ, դաշտ, հրապարակ) և օժանդակ (հանդերձարան, ցնցուղարան, խաղավարների սենյակներ, զույքի պահասենյակներ են), հանդիսատեսներին սպասարկող (տրիբունա, ճեմասրահ, բուֆետ, սանհանգույցներ են) և ինժեներական սարքավորումների (ջրամատակարարման, ջեռուցման, էլեկտրամատակարարման են) շահագործման տեխ. կառույցներից:

Մ. կ. լինում են բաց և ծածկված: Առանձին՝ մեկ կամ մի քանի մարզաձևերի սպասարկելու համար (օրինակ, մարմնամարզության և մարզական խաղերի ունիվերսալ սրահներ), և համալիր՝ բաղկացած նույն տարածքում գտնվող մի քանի մասնագիտացված կառույցներից՝ տարբեր մարզաձևերի համար: Առանձին բաց Մ. կ. են թեթևաթլետիկական ու մարզախաղերի դաշտերը, հրապարակները, լողավազանները, թիավարության ջրանցքները, դահուկային ու սահնակային ուղիները, սահադաշտերը, հրաձգարանները, հեծանվահրապարակները, ցատկահարթակները են: Համալիր բաց կառույցներն են. *մարզադաշտերը*՝ խաղադաշտով ու խաղահրապարակներով, ձիասպորտային բազաները են: Ծածկված առանձին Մ. կ. են. տարբեր *մարզասրահները*, թեթևաթլետիկական ու մարզական խաղերի մանեժները, ջրավազանները, սահադաշտերը, կորտերը են: Ծածկված համալիր Մ. կ-ից են բազմասրահ մասնաշենքերը, ունիվերսալ մարզասրահները, ծածկված մարզադաշտերը (Մոսկվա, Լենինգրադ) են: 1960—70-ական թթ. ստեղծվեցին համակցված բաց և ծածկված, ինչպես նաև փոխակերպվող (ամառը բաց և ձմեռը ծածկված) կառույցներ:

ՍՍՀՄ-ում լայն տարածում են ստանում ունիվերսալ մարզասրահները, որոնցում, բացի մարզական մրցումներից և ելույթներից, կարելի է անցկացնել հանդիսավոր ժողովներ, միտինգներ, կազմակերպել համերգներ, կինոցուցադրումներ, ներկայացումներ ու մասսայական այլ միջոցառումներ: Հայկ. ՍՍՀ-ում գործում է 23 մարզադաշտ, բասկետբոլի 502, վոլեյբոլի 535, ձեռքի գնդակի 120, թենիսի 28 խաղահրապարակ, ֆուտբոլի 91 խաղադաշտ, 75 հրաձգարան, 45 լողավազան, 1120 մարզասրահ, որից 885-ը՝ դպրոցներում: Խոշորներից են Երևանի «Հրազդան» և Ծաղկաձորի համամիութենական համալիրները, «Դինամո», «Արաքս» մարզասրահները: Երևանում կառուցվում է ժամանակակից պահանջներին համապատասխանող ունիվերսալ համերգային մարզապալատ:

**ՄԱՐԶԱԿԱՆ ԿՈՉՈՒՄ**, տրվում է միջազգային, ազգային և այլ պաշտոնական մրցումների արդյունքների, միասնական մարզական դասակարգման նորմաների ու պահանջների կատարման, մարզական ու մանկավարժական բեղմնավոր և մրցավարական ակտիվ գործունեության համար՝ ցմահ: ՍՍՀՄ-ում սահմանված Մ. կ-ներն են (շնորհում է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր ֆիզկուլտուրայի և սպորտի կոմիտեն). սպորտի վաստ. վարպետ (1934-ից), ՍՍՀՄ վաստ. մարզիչ (1956-ից), պատվավոր մրցավար (1972-ից), համամիութենական կարգի մրցավար (1934-ից), ՍՍՀՄ սպորտի վարպետ (1935-ից), ՍՍՀՄ միջազգային կարգի սպորտի վարպետ (1965-ից), ՍՍՀՄ

գրոսմայստեր (շախմատի՝ 1935-ից, շաշկու՝ 1961-ից): 1950—60-ական թթ. միութենական հանրապետություններում սահմանվեցին սպորտի վարպետի (ազգային ձևերից), հանրապետության վաստակավոր մարզիչի և հանրապետական կարգի մրցավարի Մ. կ-ներ: Ադրբեջանում, Բելոռուսիայում, Էստոնիայում, Հայաստանում, Լատվիայում, Լիտվայում և Մոլդավիայում Գերագույն սովետների նախագահությունների հրամանագրերով շնորհվում է տվյալ հանրապետության ֆիզկուլտուրայի և սպորտի վաստակավոր գործչի կոչում: Մարզական տերմինաբանության մեջ Մ. կ-ներ են դիտվում նաև չեմպիոնն ու ռեկորդակիրը: ՀՍՍՀ-ում կա (1980-ին) 22 ՍՍՀՄ սպորտի վաստ. վարպետ, 91 ՍՍՀՄ միջազգային կարգի սպորտի վարպետ, 2187 ՍՍՀՄ սպորտի վարպետ, 272 համամիութենական կարգի մըրցավար, 1071 հանրապետական կարգի մրցավար, 15 ՍՍՀՄ վաստ. մարզիչ, 447 ՀՍՍՀ վաստ. մարզիչ և ՀՍՍՀ ֆիզկուլտուրայի ու սպորտի 39 վաստ. գործիչ (հաշվարկում են նաև տեխ. մարզաձևերի ներկայացուցիչները): Մ. կ-ներին են հարվում նաև կարգերը (վարպետության թեկնածու, մարզական I, II, III և պատանեկան կարգեր): Գոյություն ունեն նաև միջազգային Մ. կ-ներ, որոնք շնորհում են համապատասխան մարզական ֆեդերացիաները: Դրանցից են. միջազգային կարգի մրցավար (ըստ ձևերի՝ ՀՍՍՀ-ում՝ 16), միջազգային գրոսմայստեր և վարպետ (շախմատ, շաշկի, ՀՍՍՀ-ում 2 գրոսմայստեր՝ մեկը շախմատային կոմպոզիցիայի, և 2 վարպետ): Մ.կ-ների հետ առնչվում են մարզական նշաններն ու պարգևները: ՍՍՀՄ-ում սահմանված են միասնական միութենական կրծքանշաններ, որոնք տրվում են համապատասխան Մ. կ. շնորհելու հետ միասին: Դրանցից են «ՍՍՀՄ սպորտի վաստակավոր վարպետ» (1935-ին առաջինն ստացել է չմշկորդ Յա. Ֆ. Մելնիկովը), «ՍՍՀՄ սպորտի վարպետ» (1949-ին, մարմնամարզիկ Ա. Ս. Աբրահամյանը), «ՍՍՀՄ վաստակավոր մարզիչ» (1956-ին, Վ.Ի. Ալեքսեև, թեթև աթլետիկա), «ՍՍՀՄ միջազգային կարգի սպորտի վարպետ» (1965-ին, Բ. Ա. Մայորով, հոկեյիստ), «Պատվավոր մրցավար», «Ֆիզկուլտուրայի և սպորտի գերազանցիկ», «Մրցավարների համամիութենական կոլեգիա» (համամիութենական կարգի մըրցավարների համար), «ՊԱՊ» ևն: Մարզական պարգևներից են աշխարհի, մայր ցամաքների, որևէ երկրի առաջնությունների և օլիմպիական խաղերի մեդալները, փոխանցիկ մրցանակները (գավաթ), դիպլոմները, պատվոգրերը, հուշամեդալները ևն:

**ՄԱՐԶԱԿԱՆ ՀԱՆԴԵՐՁԱՆՔ ԵՎ ԿԱՀԱՎՈՐՈՒՄ**, առարկաներ և գույք ֆիզկուլտուրայով ու սպորտով զբաղվելու համար, որոնք պատրաստվում են միջազգային (կամ որևէ երկրի) մարզական ֆեդերացիաների հաստատած ու ստանդարտների միջազգային (կամ որևէ երկրի) կազմակերպությունների ընդունած տիպօրինակներով: Մ. հ. և կ-ի հիմնական խմբերն են հագուստը (շուրջ 200 տեսակ), կոշիկները (ավելի քան 60 տեսակ), ապահովիչ և պաշտպանիչ հանդերձանքը (ակնոց, դիմակ, սաղավարտ, ձեռնոցներ ևն), գնդակները, ռակետները, մականները, մարզական զենքերը, թեթև և ծանր աթլետիկայի և մարմնամարզության գործիքները, մարզական նավակները, հեծանիվները, մոտոցիկլետները, ավտոմեքենաները, ինքնաթիռները, պլաներները, ինչպես նաև դարպասները, ցանցերը, բռնցքամարտի ռինգը, ըմբշամարտի գորգերը ևն: ՍՍՀՄ-ում Մ. հ. և կ. արտադրում են մոտ 700 ձեռնարկություն (խոշորագույնը՝ Մոսկվայի «Սպորտ» կոմբինատը): Մ. հ. և կ. արտադրող արտասահմանյան խոշորագույն ֆիրմաներից են «Ադիդաս»-ը և «Բերգ»-ը (ԳՖՀ), «Դանլոփ»-ը (Մեծ Բրիտանիա), «Արտեքս»-ը (Հունգարիա), «Բոտաս»-ը (Չեխոսլովակիա) և ուրիշներ:

**ՄԱՐԶԱԿԱՆ ՄԱՄՈՒԼ**, ֆիզկուլտուրան ու սպորտը պրոպագանդող թերթեր, հանդեսներ, տեղեկատուներ և պարբերական այլ հրատարակություններ: ՍՍՀՄ-ում Մ. մ. կոմունիստական դաստիարակության համակարգի տարրերից է: Լինում է. կենտրոնական (ՍՍՀՄ Մինիստրների խորհըրդին առընթեր ֆիզկուլտուրայի և սպորտի կոմիտեի, ՀԱՄԿԽ-ի և ԴՕՍԱԱՖ-ի օրգաններ, ինչպես նաև մարզական ֆեդերացիաների հրատարակություններ), հանրապետական, տեղական (մարզային ու քաղաքային թերթերի հավելվածներ, տեղեկատուներ, մրցումների ծրագրեր ևն): Սովետական առաջին մարզական ամսագիրը «Սպորտ»-ն էր («Спорт», 1918): ՍՍՀՄ-ում լույս տեսնող մարզական թերթերի տպաքանակն ավելի քան 5 մլն է, իսկ ամսագրերինը՝ մոտ 2 մլն: Մեծ մասսայականություն են վայելում «*Սովետսկի սպորտ*» թերթը [«Советский спорт», 1924-ից, մինչև 1946-ը՝ «Կրասնի սպորտ» («Красный спорт»)], «Ֆիզկուլտուրա ի սպորտ» («Физкультура и спорт», 1922-ից), «Սպորտիվնիյե իգրի» («Спортивные игры», 1955-ից), «Շախմատի վ ՍՍՍՌ» («Шахматы в СССР», 1921-ից) և այլ ամսագրեր: Մ. մ. կա միութենական բոլոր հանրապետություններում: ՀՍՍՀ-ում լույս են տեսնում «*Հայաստանի ֆիզկուլտուրնիկ*» թերթը՝ 1956-ից և «*Շախմատային Հայաստան*» հանդեսը՝ 1972-ից: Սոցիալիստական երկրներում հրատարակվում է ավելի քան 100 անուն թերթ ու ամսագիր (ԳԴՀ-ում՝ մոտ 40, Չեխոսլովակիայում՝ 20, Լեհաստանում՝ 10 ևն), հայտնի են «ԴԴՌ—Սպորտ» («DDR—Sport», Բեռլին, 1959-ից), «Աթլետիկա» («Atletika», Պրագա, 1949-ից), «Նարոդեն սպորտ» («Народенъ спортъ», Սոֆիա, 1944-ից) ևն: Կապիտալիստական երկըրներում Մ. մ. հրատարակում են մարզական միություններն ու ակումբները և մասնավոր հրատարակությունները: Մ. մ-ի հատուկ խումբ են կազմում միջազգային մարզական միավորումների թերթերը, ամսագրերն ու տեղեկատուները, որոնցից են «Բյուլետեն օֆիսիել դը լ ՈւԷՖԱ» («Bulletin officiel de l'UEFA», Բեռն, 1960-ից), «ՖԻՖԱ նյուզ» («FIFA news», Ցյուրիխ, 1963-ից, անգլ., ֆրանս., իսպ., գերմ.), «ՖԻՍ-բյուլետեն» («FIS-Bulletin», Բեռն, 1958-ից) ևն:

**ՄԱՐԶԱԿԱՆ ՄԻԱՎՈՐՈՒՄՆԵՐ** միջազգային, ֆիզիկական կուլտուրայի ու սպորտի միջազգային և մայրցամաքային ոչ կառավարական կազմակերպություններ: Մ. մ-ի անդամներ են ազգային, որոշ դեպքերում նաև միջազգային մարզական կազմակերպությունները, ինչպես նաև առանձին անհատներ: Մ. մ. տարբերակվում են. ընդհանուր բնույթի, որոնց գործունեությունը չի սահմանափակվում որևէ մարզաձևով (օրինակ, Ֆիզիկական դաստիարակության և սպորտի միջազգային խորհուրդը), հատուկ որևէ մարզաձևի (բռնցքամարտի, վոլեյբոլի ևն), ֆիզկուլտուրային և սպորտին առնչվող գիտությունների (օրինակ, Մարզական բժշկության ֆեդերացիա), ըստ մասնագիտության (օրինակ, Երկաթուղայինների միջազգային մարզական միություն) ևն: Կան Մ. մ., որոնց անդամ են հանդիսանում միայն սոցիալիստական երկրների (Բարեկամական բանակների մարզական կոմիտե) կամ միայն կապիտալիստական երկրների (Զինվորական սպորտի միջազգային խորհուրդ) մարզական կազմակերպությունները: Գոյություն ունեն ավելի քան 200 Մ. մ., որոնց խնդիրներն են. օգնել ստեղծելու համապատասխան ազգային կազմակերպություններ, ճանաչել դրանք, հաստատել և զարգացնել կապերը, հսկել այդ կազմակերպությունների ընդունած կանոնների կատարումը, ուսումնասիրել ու տարածել միջազգային փորձը, պլանավորել ու անցկացնել միջազգային մրցումներ, գրանցել ռեկորդները: Սովետական մարզական կազմակերպությունները 70 Մ. մ-ի անդամ են: Տես նաև *Մարզական ֆեդերացիաներ*:

**ՄԱՐԶԱԿԱՆ ՄՐՑՈՒՄՆԵՐ**, խնդիրներն են. ի հայտ բերել ուժեղագույն մարզիկներին և թիմերին, մարզական վարպետության կատարելագործումն ու բարձրագույն նվաճումները, պրոպագանդել ֆիզիկական կուլտուրան ու սպորտը: Լինում են միջազգային, աշխարհամասային ու ազգային (որևէ երկրի): Ըստ ծրագրի կարող են լինել կոմպլեքսային (օլիմպիական խաղեր, սպարտակիադաներ ևն) և մասնագիտացված (որևէ մարզաձև). հաղթողին որոշելու պայմաններով՝ անհատական (միայն անհատական արդյունքներով), թիմային, անհատական-թիմային. բնույթով՝ պաշտոնական (խաղարկվում են չեմպիոնի կոչումը, գավաթը ևն), դասակարգման (մասնակիցների մարզական դասակարգումը որոշելու համար), ընկերական (նաև ավանդական, օրինակ, ՍՍՀՄ—ԱՄՆ թեթև աթլետների հանդիպումները): Անցկացվում են 3 ձևով. շրջանային (իրար հետ բոլոր մասնակիցների մեկ կամ մի քանի անգամ հանդիպումներ, հաղթանակը՝ միավորներով), գավաթային (պարտվողը դուրս է մնում) և խառը (շրջանային և գավաթայինի սկզբունքների միավորում): Մ. մ. ունեն հետևյալ տարբերակները. տղամարդկանց և կանանց (բացառությամբ ձիավարության և տեխ. որոշ ձևերի), մեծահասակների, երիտասարդական, պատանեկան և մանկական (մարզական պարերը, գեղասահքը, թենիսը, սեղանի թենիսը ևն՝ խառը զույգերով):

Մ. մ-ի կանոնների հսկողությունը և արդյունքների գրանցումը իրականացնում են մրցավարները:

**ՄԱՐԶԱԿԱՆ ՖԵԴԵՐԱՑԻԱՆԵՐ,** ֆիզկուլտուրայի ու սպորտի միջազգային (աշխարհամասային) և ազգային (որևէ երկրի) ոչ պետական, հասարակական կազմակերպություններ:

ՍՍՀՄ-ում ստեղծվում են ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր ֆիզկուլտուրայի և սպորտի կոմիտեին և ԴՕՍԱԱՖ-ի կենտկոմին կից: Առաջին մարզական միավորները (սեկցիաներ) ՍՍՀՄ-ում ձևավորվել են 1923—24-ին (թենիսի, շախմատի ևն), հետագայում (1930—1950) այդպիսիք ստեղծվեցին մարզաձևերի մեծ մասի գծով: 1959-ին դրանք վերանվանվեցին Մ. ֆ.: Այժմ գործում են մոտ 70 Մ. ֆ., որոնք ղեկավարում են նաև հանրապետական համապատասխան ֆեդերացիաների գործունեությունը:

Հայաստանում գործում են ֆուտբոլի, մարմնամարզության, շախմատի, ժամանակակից. հնգամարտի, բռնցքամարտի, ծանր աթլետիկայի, ջրային, տեխ. ու պաշտպանական մարզաձևերի, թեթև աթլետիկայի, թենիսի, սեղանի թենիսի, դասական ըմբշամարտի և այլ՝ թվով 33 Մ. ֆ.: Տես նաև *Մարզական միավորումներ* միջազգային:

**ՄԱՐԶԱՍՐԱՀ**, մարզական փակ կառույց. որ համախմբում է մարզումների և ցուցադրումների համար անհրաժեշտ սրահները, հաճախ նաև հանդիսատեղեր: Մ-ներ կառուցվել են դեռևս անտիկ աշխարհում, պալեստրա, գիմնասիոն (Հունաստան), կրկես, ամֆիթատրոն, թերմեր (Հռոմ): Միջնադարում Մ-ի նոր տիպ չի ստեղծվել: *Օլիմպիական խաղերը* վերսկսելու կապակցությամբ (1896) աշխուժացել է Մ-ների շինարարությունը: Հայտնի են ծածկված սրահը Սան Լուիում (1930), «Դինամո»-ի թենիսի դաշտը Մոսկվայում (1936), Ռալեյ սրահը ԱՄՆ-ում (1950), «Պալացցո դելլա սպորտը» Հռոմում (1959), «Յոյոգին» Տոկիոյում (1964), Լուժնիկիի մարզական պալատը Մոսկվայում (1956), Օլիմպիադա —80-ի Մ-ները Մոսկվայում:

Հին Հայաստանում կառուցված Մ-ները չեն պահպանվել, սակայն մատենագրական տեղեկությունները վկայում են, որ Հայաստանում եղել են ոչ միայն բաց մարզասպարեզներ, այլև փակ մրցարան-մարզարաններ, գլխավորապես զահանիստ քաղաքներում, ուր սիստեմատիկորեն կազմակերպվել են մրցումներ: Մ-ների շինարարությունը մեծ ծավալ է ստացել Սովետական Հայաստանում՝ կառուցվել են շուրջ 235 Մ-ներ: Նշանավոր է Երևանի «Դինամո» Մ.՝ 1800 հանդիսատեղով (1965, ճարտ-ներ Կ. Հակոբյան, Ն. Ալավերդյան, կոնստրուկտոր՝ Կ. Ղազարյան):

*Մ. Միքայելյան*

**ՄԱՐԶԻՉ**, ֆիզկուլտուրայի դասատու, որոշակի մարզաձևի մասնագետ: Կատարում է ուսումնա-մարզչական աշխատանք մարզիկներ դաստիարակելու, ուսանելու և վարպետությունը կատարելագործելու նըպատակով, զարգացնում նրանց ֆունկցիոնալ հնարավորությունները: ՍՍՀՄ-ում Մ-ներ հիմնականում պատրաստում են ֆիզիկական կուլտուրայի ինստ-ների մարզական ֆակուլտետները: Միջազգային և համամիութենական մրցումներում բարձր արդյունքների հասած մարզիկներ և թիմեր պատրաստելու համար Մ-ին շնորհվում է ՍՍՀՄ կամ հանրապետության վաստակավոր Մ-ի պատվավոր կոչում:

**ՄԱՐԶՊԱՆ**, մարծպան (պահլ. marzpan — կուսակալ), Սասանյան Իրանի գերիշխանությանը ենթակա վարչական միավորի՝ *մարզպանության* կառավարիչը և արքայից արքայի տեղապահը: Հայ Արշակունի արքայատան անկումից (428) և *Մարզպանական Հայաստանի* ստեղծումից հետո Սասանյան արքունիքը V—VII դդ. Հայոց Մ-ներ է նշանակել թե՛ պարսիկ, թե՛ հայ իշխաններից: Հայերը Մ-ին անվանել են նաև «Տանուտեր Հայոց»: Մինչև V դ. կեսը Մ-ի աթոռանիստ քաղաքն է եղել Արտաշատը, այնուհետև՝ Դվինը: Հետագայում, կուսակալի իմաստով, Մ. գործածվում էր նաև հայ Բագրատունիների արքունիքում: 908-ից «Մ.» տիտղոսը կրում էր Արծրունյաց թագավորը՝ Վասպուրականում: Մ-ի պաշտոն են վարել նաև Տաշիր—Ձորագետի Կյուրիկյան թագավորների վասալները՝ Դսեղի Մամիկոնյանները, որոնց տոհմում «Մարզպան-մարծպանը» դառնում է նույնիսկ անձնանուն:

*Գրկ.* Адонц Н., Армения в эпоху Юстиниана, СПБ, 1908.

*Մ. Երեմյան*

**ՄԱՐԶՊԱՆԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ**, Սասանյան Իրանի (Երանշահրի) գերիշխանությանը ենթակա առանձնահատուկ վարչական միավոր V—VII դարերում: Հիմնականում ընդգրկում էր Մեծ Հայքի Այրարատ, Տուրուբերան, Սյունիք, Վասպուրական, Մոկս և Տայք, հաճախ նաև Արցախ նահանգները կամ «աշխարհները»՝ 134 հզ. *կմ*², իսկ Արցախի հետ՝ շուրջ 145 հզ. *կմ*² տարածությամբ և շուրջ 3 մլն հայ բնակչությամբ: Սասանյան Իրանի և Հռոմեական (Բյուզանդական) կայսրության միջև *Մեծ Հայքի* թագավորության բաժանումից (385) առաջ արդեն անդամահատվել էին Հայոց ծայրամասային նահանգները՝ Գուգարքը, Ուտիքը, Արցախը, Փայտակարանը, Նոր-Շիրականը (Պարսկահայք), Կորճայքը, Աղձնիքը, Հայոց Միջագետքը: 385-ին Մեծ Հայքի Ծոփք և Բարձր Հայք նահանգներն անցան Հռոմ. կայսրությանը, մնացածը՝ Սասանյան Իրանին: Արշակունի արքայատան ներկայացուցիչները շարունակեցին ձևականորեն իշխել առաջինում մինչև 387 թ., երկրորդում՝ մինչև 428 թ.: Այնուհետև Մ. Հ-ում (բյուզ. աղբյուրներում հորջորջվում է նաև Պերսարմենիա-Պարսկահայք անունով) կառավարում էր Սասանյան արքունիքից նշանակված *մարզպանը*: Մ. Հ. իրենից ներկայացնում էր ինքնավար մի երկիր, որի փաստական տերն ու տնօրենը դարձան հայ նախարարները, պահպանվեցին նրանց գործակալական իշխանության բոլոր իրավունքները, հայկ. զորաբանակը մնաց Հայոց սպարապետի տնօրինության ներքո: Սասանյան արքունիքին տրվում էին միայն արքունի այն հարկերն ու եկամուտները, որոնք գոյություն ունեին Արշակունի վերջին թագավորների ժամանակ: Սասանյանները Մ. Հ-ում իրենց քաղ. տիրապետությունը հաստատեցին հայ նախարարների ու եկեղեցու հնավանդ իրավունքներն ու արտոնությունները ճանաչելու գնով: Պետ. կառավարման ապարատը ենթարկվեց մասնակի փոփոխությունների: Հայ Արշակունիների անկումով վերացան նրանց ժառանգական իրավունքները: Նրանց բոլոր հարստությունները, որոնք մնացել էին Հայաստանի պարսկ. մասում, հայտարարվեցին Սասանյան արքայից արքայի սեփականություն, իսկ Այրարատյան ոստանից դուրս գտնվող արքունի տիրույթները բաժանվեցին հայ նախարարների միջև: Մարդպետական նախարարական տոհմը վերացավ, իսկ նրա ընդարձակ կալվածքներն անցան Արծրունիներին: Կոգովիտ գավառը՝ Դարույնք ամրոցով դարձավ Բագրատունիների ժառանգական սեփականությունը: Արշակունի կրտսեր զարմերի գավառներում (Հաշտեանք, Աղիովիտ, Առբերանի) առաջ եկան նոր նախարարական տներ (Կամինական, Գնունի ևն): Գրիգոր Լուսավորչի տան միակ ժառանգի՝ Մամիկոնյանների հարս Սահակդուխտի ընդարձակ հողային տիրույթները (Բագրևանդ գավառը ևն) անցան Մամիկոնյաններին: Աղբիանոսյան տոհմի կալվածքները (Տարոն և Հարք գավառներում) դարձան նրանց աշխարհիկ տոհմակիցների՝ Վահունի կամ Վահնունի նախարարական տան ժառանգական սեփականությունը: Գողթան գավառի եպիսկոպոսական տան ներկայացուցիչները ևս թողեցին հոգևորական սքեմը և դարձան աշխարհիկ իշխաններ: Այս երևույթը դիտվում է Բասեան գավառում և այլուր:

Մինչև V դ. կեսը Հայոց մարզպանը նստում էր Արտաշատում, այնուհետև՝ Դվինում: Սասանյան պետության մյուս մարզպանությունների համեմատությամբ Հայաստանը գտնվում էր արտոնյալ վիճակում: Երկրի կառավարման պաշտոնները՝ գործակալությունները, մարզպանը պարտավոր էր հանձնել հայ նախարարներին, չխախտել նրանց դարավոր ժառանգական իրավունքի սկզբունքը: Սպարապետության գործակալությունը նախկինի պես վարում էին Մամիկոնյանները, հազարապետությանը՝ Ամատունիները, մաղխազությանը՝ Խորխոռունիները (նոր պայմաններում Խորխոռունի նահապետը հանդիսանում էր մարզպանի թիկնապահների գնդի պետը): Պահպանվում էր Մեծ դատավորության գործակալությունը, որը գլխավորում էր Հայոց կաթողիկոսը:

Վեհմիհրշապուհ մարզպանից հետո արքայից արքա Հազկերտ II (439—459) Հայոց մարզպան նշանակեց Վասակ Սյունուն (443—451), որը 441-ից Ալանաց դըռները պահպանող Ծանարների գավառի պարսկ. կայազորների պետն ու մարզպանն էր: Նրա ժամանակ Մ. Հ-ում բացի Այրարատի որոշ բերդերում տեղակայված «կայենական» կոչվող պարսկ. զորամասերից, որոնք նույնպես ենթարկվում էին Վասակ Սյունուն, չկար Սասանյան իշխանության այլ ներկայացուցիչ: Երկիրն ապրում էր շինարարության ու մշակութային զարգացման շրջան: Մ. Հ. բաղկացած էր խոշոր ու մանր տիրույթներից, յուրաքանչյուրում ժառանգաբար իշխում

էր «տէրը»՝ նախարարը: Նախարարական տոհմի ժառանգական տիրույթը կոչվում էր նաև «տուն», իսկ նրա տերը՝ «տանուտէր»: Յուրաքանչյուր նախարար ուներ իր զորքը, տոհմական զինանշանն ու դրոշը: Նախարարը դիտվում էր Սասանյան արքայից արքայի վասալը: Իր տիրույթի սահմաններում նախարարը լիիրավ տեր էր. նա դատավարում էր ենթակա բնակչությանը, հավաքում հարկը: Պետ. հարկերը նախարարը հանձնում էր Հայոց հազարապետին, վերջինս՝ «Վասպուրական համարակարի» ներկայացուցչին, որն այն ուղարկում էր Սասանյանների գանձարանը: Պարսկա-բյուզ. սպառնալիքները դիմակայելու և կախյալ գյուղացիության ներքին ընդվզումները ճնշելու համար հայ նախարարները համախմբել են իրենց ուժերը: Նրանց քաղ. միասնությունն արտահայտվում էր պետ. կառավարման ընդհանուր ապարատով, նախարարների ու հոգևորականության խորհրդակցական ու օրենսդրական մարմնով՝ ժողովով: Այն գումարվում էր ըստ անհրաժեշտության, Հայոց կաթողիկոսի նախագահությամբ: Այդ պատճառով ժողովում ընդունված օրենքներն ունեին եկեղեցական կանոնադրության բնույթ: Նախարարների քաղ. միասնությունը արտահայտվում էր նաև նախարարական հեծելազորի՝ Հայոց այրուձիու և հետևակազորի միասնական ռազմ. կազմակերպությամբ, որը գլխավորում էր Հայոց սպարապետը:

Մ. Հ-ում ֆեոդ. շահագործումն ուներ խառը բնույթ: Կախյալ գյուղացիները՝ շինականները, շահագործվում էին պետ. իշխանության կողմից՝ ի դեմս Սասանյանների, որը ստանում էր «արքունի հարկեր»՝ հողահարկ («հաս») և գլխահարկ: Հայոց հազարապետը արքունիքի համար հավաքում էր պետ. հարկերը՝ հողահարկն ու գլխահարկը, տնօրինում էր մարզպանին անմիջապես ենթակա Այրարատում կատարվող շինարարությունը և հետևում ոռոգման համակարգի աշխատանքին: Գյուղացիների ու արհեստավորների աշխատանքային պարհակներն ավելի էին ծանրացել, որովհետև այժմ հազարապետը պարտավոր էր Սասանյան պետության աշխատանքային պարհակների գործակալության պետին («զարիկպետ») տրամադրել պահանջվող քանակի աշխատող ձեռքեր («մարդահարկի» կարգով): Մյուս կողմից, շինականին շահագործում էր եկեղեցին, որն արտահայտվում էր կոռով, պարհակներով ու բնավճար տուրքերով՝ «պտուղ»-ով: Մ. Հ-ի ձեռք բերած արտոնություններն ու ներքին ինքնուրույնությունը երկար չտևեցին. շուտով Սասանյան արքունիքը սկսեց վարել երկիրը սովորական պարսկ. նահանգ դարձնելու քաղաքականություն: Հազկերտ II նպատակադրվեց ոչնչացնել հայերի (ինչպես նաև վրացիների ու աղվանների) ներքին ինքնուրույնությունը և հող նախապատրաստել՝ պարսիկների հետ նրանց միաձուլելու համար: Սասանյանները նախ և առաջ ուշադրություն դարձրին Հայոց եկեղեցու վրա, որը դեռևս չէր բաժանվել «տիեզերական» եկեղեցուց և դիտվում էր որպես Բյուզանդիայի քաղ. շահերի արտահայտիչ:

Մ. Հ-ի դեմ Սասանյանների երկրորդ ծանր միջոցառումը հայ բնակչության ընդհանուր «աշխարհագիրն» էր՝ հարկհանման ենթակա օբյեկտների հաշվառումը, որի հետևանքով զգալիորեն բարձրացան հարկերը: Երրորդ միջոցառումն էր՝ չեզոքացնել հայ նախարարների ռազմ. ուժերը: Միջին Ասիայից ներխուժող հոների դեմ կռվելու պատրվակով, Հազկերտ II-ի կարգադրությամբ, Մ. Հ-ից հայկ. հեծելազորը հանվեց և ուղարկվեց արքայից արքայի նոր հիմնած ռազմակայանը Մարվիռոտում (Մերվի Օազիս): Դրանով երկիրը զրկվեց Սասանյաններին դիմադրելու հնարավորությունից: Սասանյան արքունիքը սկսեց խախտել նաև նախարարների ժառանգական արտոնությունները՝ փաստորեն նրանց հեռացնելով երկրի քաղ. ղեկավարումից: 449-ին Սասանյանների հազարապետ Միհրներսեհը արքունի հրովարտակով հայ նախարարներից պահանջեց ուրանալ քրիստոնեական կրոնը և ընդունել զրադաշտականություն: Մերժելու դեպքում նախարարները պետք է մեկնեին Տիզբոն և ներկայանային արքայից արքայի ատյանին: Այս հրովարտակին պատասխանելու համար նույն թվականին հրավիրվեց Արտաշատի ժողովը, որը և մերժեց պարսից հրովարտակի պահանջները: Հայերի պատասխանը Տիզբոնում դիտվեց որպես հակապետ. ընդվզում, Հայաստանի, Վրաց աշխարհի ու Աղվանքի նախարարական տների գլխ. ներկայացուցիչները կանչվեցին արքայից արքայի դատին: Հաշվեհարդարի վտանգից խուսափելու նպատակով Տիզբոն ժամանած նախարարները առերես ընդունեցին զրադաշտական կրոնը և հնարավորություն ստացան վերադառնալ հայրենիք: Երբ հայ նախարարներն ու քրիստոնյա հոգևորականությունը համոզվեցին, որ ոտնահարվում են իրենց դասային իրավունքները, նրանք սկսեցին գլխավորել ժող. զանգվածների համընդհանուր դժգոհությունն ու ազատագրական պայքարը: 450—451-ին հայերի ժողովրդա-ազատագրական պատերազմը՝ սպարապետ *Վարդան Մամիկոնյանի* առաջնորդությամբ, վերջացավ Ավարայրի հերոսական ճակատամարտով (տես *Ավարայրի ճակատամարտ 451*): Այն Սասանյան Իրանին հարկադրեց զիջումներ անել. Մ. Հ-ում Սասանյանները վերականգնեցին կրոն. ազատությունը, թեթևացրին հարկերը, զինվորական ծառայությունը, ապստամբներին վերադարձրին իրենց ունեցվածքը, հրաժարվեցին բռնի ազգաձուլման քաղաքականությունից:

Սակայն դրանք ժամանակավոր զիջումներ էին: Ապահովվելով թիկունքի անվտանգությունը Բյուզանդիայից, ինչպես նաև հոների ու հեփթաղների ներխուժումներից՝ Սասանյան Իրանը վերստին սաստկացրեց իր ազգահալած գործողությունները Հայաստանում, Վիրքում ու Աղվանքում: Վերացնելով թագավորական իշխանությունը Աղվանքում (461)՝ պարսիկները վերսկսել են քրիստոնեական եկեղեցու հալածանքները և բռնությամբ տարածել կրակապաշտությունը: Հայերը, վրացիներն ու աղվանները պետ. պաշտոն կարող էին ստանալ միայն զրադաշտական կրոն ընդունելու գնով: Դեպքերին ականատես պատմիչ Ղազար Փարպեցին հաղորդում է, որ տանուտիրությունը և ժառանգական այլ պաշտոնները հայ նախարարները կարող էին ստանալ հավատուրացության գնով: Հայրենի ուխտին հավատարիմ նախարարներին դարձյալ ճնշում, հալածում կամ ոչնչացնում էին:

482—484-ին Մ. Հ-ում բռնկվեց համաժող. նոր ապստամբություն՝ *Վահան Մամիկոնյանի* առաջնորդությամբ, որն ավարտվեց հայերի հաղթանակով: Միջին Ասիայում հեփթաղների դեմ կռվում սպանված Սասանյան արքայից արքա Պերոզի որդին և հաջորդը՝ Վաղարշը (484—486), հարկադրված էր վարել խաղաղասիրական քաղաքականություն և ճանաչել Հայաստանի ու Վրաց աշխարհի ներքին ինքնուրույնությունը Մ. Հ-ի և Իրանի միջև կնքված նոր պայմանագրով (տես *Նվարսակի պայմանագիր 484*): Հայաստանում վերականգնվեցին նախարարների նախկին արտոնություններն ու կարգերը: Սասանյանները քրիստոնեությունը ճանաչեցին Հայաստանի պետ. կրոն: Երկրի կառավարման գործը կրկին հանձնվեց հայ ավագանուն: Ժողովրդի կողմից «Տանուտէր հայոց» ճանաչված սպարապետ Վահան Մամիկոնյանը 485-ի գարնանը մեկնեց Տիզբոն, ուր արքայից արքա Վաղարշը նրան ընդունեց արքայավայել մեծարանքով: Վաղարշը գրավոր հաստատեց հաշտության պայմանագրի կետերը, ապա հատուկ հրամանագրով Հայաստանի տանուտեր և սպարապետ ճանաչեց Վահան Մամիկոնյանին: 485-ի աշնան վերջին արքայից արքա Վաղարշակը նրան ճանաչեց Հայաստանի կառավարիչ-մարզպան: Այնուհետև Մ. Հ. Հայոց մեջ կոչվում էր «Տանուտիրական երկիր», իսկ հայ մարզպանը՝ «Տանուտէր Հայոց»: Սասանյան Իրանի հանդուրժողական քաղաքականությունը այս ժամանակաշրջանում պայմանավորված էր նաև նրանով, որ Քաղկեդոնի 4-րդ տիեզերական ժողովից (451) հետո Հայաստանյայց Առաքելական եկեղեցին մնաց միաբնակ, որը վրաց և աղվանից եկեղեցիների հետ հակադրվում էր բյուզ. «տիեզերական» եկեղեցուն: 501-ին Սասանյանները ճանաչեցին Հայոց միաբնակ եկեղեցու ինքնուրույն գոյությունը, որից հետո հայ հոգևորականությունը սկսեց մերձենալ պարսկ. արքունիքին:

Հայ աշխատավորության վիճակը վերստին վատթարացավ Պարսից արքայից արքա Խոսրով I Անուշիրվանի (531—578) նոր «աշխարհագրի» ու մտցրած հարկային նոր կարգի հետևանքով: Գլխահարկը հանձնվում էր դրամով, որը բնատնտ. հարաբերությունների տիրապետության պայմաններում քայքայում էր գյուղացիներին, նրանք դառնում էին աշխարհիկ ու հոգևոր ֆեոդալների, ինչպես նաև վաշխառուների անվճարունակ պարտապաններ: Գյուղացիական տնտեսությունը քայքայվում էր ոչ միայն ծանր տուրքերից, այլ նաև «զարիկպետին» որպես պետ. պարհակ («մարդահարկ») անընդհատ բանող ուժ և ռազմիկներ տրամադրելուց, որոնք հաճախ օգտագործվում էին պետության հեռավոր վայրերում, ինչպես նաև Բյու-

զանդիայի դեմ Սասանյանների մղած երկարատև պատերազմներում:

Բոլոր այս երևույթները արագացնում էին գյուղական համայնքի ներսում հասարակական շերտավորման խորացումը: VII դ. սկզբին գյուղական համայնքի ներսում ի հայտ եկավ գյուղացիների երեք շերտ՝ ունևորներ («թուանիկ»), «տառապյալներ» և վարելահող ու այգի չունեցող գյուղացիներ: Դասակարգային հակասությունների սրման հետևանքով այդ ժամանակ էլ ծնունդ առավ պավլիկյանների հասարակական-աղանդավորական ուսմունքը, որը դարձավ գյուղացիական զանգվածների շարժման դրոշը և շոշափելի հետք թողեց միջնադարյան Հայաստանի ու Բյուզանդիայի դասակարգային պայքարի պատմության մեջ:

VI դ. վերջին Հայաստանը վերստին դառնում է պարսկա-բյուզ. հակամարտությունների թատերաբեմ: Մավրիկիոս կայսեր ժամանակ՝ 591-ին, Հայաստանը վերաբաժանվեց երկու մարտնչող պետությունների միջև: Բյուզ. կայսրությունը իր սահմանագիծը Հայաստանում ընդլայնեց մինչև Դվինի մատույցները և Վանա լիճը: Մ. Հ-ի կազմում մնացին Դվինի Ոստան գավառը, Վասպուրական և Մոկք նահանգները (Սյունիքը դեռևս 572-ի ապստամբության ժամանակ անջատվել էր Մ. Հ-ից և իբրև առանձին շահր մտցվել Ատրպատականի կազմում): Պատերազմները երկու պետությունների միջև շարունակվեցին մինչև արաբ. արշավանքները (628): Երկարատև պատերազմների հետևանքով մարտնչող պետությունների դիմադրողական ուժն այնքան էր թուլացել, որ արաբ. վաչկատուն ցեղերը իրենց գերիշխանությունը՝ իսլամական կրոնով հանդերձ, տարածեցին ամբողջ Առաջավոր Ասիայում և Հյուսիսային Աֆրիկայում: Մ. Հ-ի տերիտորիալ փոփոխությունների պատճառով առաջացած բյուզ. գերիշխանության հետևանքն այն էր, որ մարզպանի փոխարեն հայ նախարարների միջև բարձրանում էր երկրի կառավարիչը, որը կրում էր «Իշխան հայոց» կամ «պատրիկ» տիտղոսը, որով ճանաչվում էր նախկին Մ. Հ-ի ներքին ինքնավար վիճակը՝ իբրև վասալ պետություն: Չնայած երկիրը դարձել էր արաբա-բյուզ. պատերազմների ասպարեզ, այնուամենայնիվ արաբները կարողացան իրենց գերիշխանությունը Հայաստանի երկու մասերում հաստատել միայն 706-ին:

V—VII դդ. Մ. Հ. ապրեց մշակութային վերելք, դրվեցին հայկ. ֆեոդ. մշակույթի հիմքերը, որի մեջ դեռևս ուժեղ էին հելլենիստական ավանդույթները:

Քարտեզը տես 320-րդ էջից հետո՝ ներդիրում:

Գրկ. Մանանդյան Հ., Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, Ե., 1934: Նույնի, Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում, «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության», հ. 2, 2 մասի նյութեր, Ե., 1960: Адонц Н., Армения в эпоху Юстиниана, СПБ, 1908. *Ա. Երեմյան*

**ՄԱՐԶՊԱՆՈՒԹՅՈՒՆ**, վարչական բաժանում Սասանյան Իրանում (Երանշահրում): V—VII դդ. Մ. է եղել *Մարզպանական Հայաստանը*:

**ՄԱՐԶՎԱՆ**, Մարսվան, քաղաք Սեբաստիայի (Սվազի) վիլայեթում (այժմ՝ Ամասիայի վիլայեթի վարչական կենտրոնը): Քաղաքը գտնվում է Հալիս և Եշիլըրմակ գետերի միջև, Ամասիայից 60 *կմ* հս-արմ.: Տարբեր ժամանակներում նրան տիրել են հույները, հռոմեացիները, XVI դարից՝ օսմանյան թուրքերը: 1914-ին ուներ 35 հզ. խառը բնակիչ, որոնցից 14 հզ. հայեր, մնացածը՝ թուրքեր, հույներ: Հայերն զբաղվում էին արհեստներով, առևտրով: Նրանք ունեին 3 եկեղեցի և դպրոցներ (Ազգային ճեմարան, Հռիփսիմյան): Կային Մատուռ, Լույս Աղբյուր և Խաչին լեռ անունով ուխտավայրեր: Մ-ում գործել է Կրթասիրաց միություն անունով մշակութային ընկերություն, լույս են տեսել «Զեփյուռ» (1889), «Արույսյակ» (1889), «Հայկունի» (1910—12), «Բողբոջ» (1911—1914), «Նոր այգ» (1910—14) հայերեն պարբերականները: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին, թուրք. կառավարության կազմակերպած ջարդերի հետևանքով:

**ՄԱՐԶՈՒՄ**, մասնագիտացված մանկավարժական պրոցես, որի նպատակը մարզիկի ֆիզիկական ընդհանուր ու հատուկ պատրաստականության և անհատական կարողությունների կատարելագործման միջոցով որևէ մարզաձևում առավելագույն արդյունքի հասնելն է: Դեռևս Հին Հունաստանի օլիմպիական խաղերում Մ. համարվում էր մրցակցական վարժության բազմաթիվ կրկնություն, սակայն XX դ. սկզբին այն դարձավ հատուկ կազմակերպված մանկավարժական պրոցես, որի պլանավորումը, ընթացքը և վերահսկողությունը սերտորեն կապված է մարզիկի հետ տարվող դաստիարակչական, ուսուցողական աշխատանքների, կենսբ. և հոգեբանական հարցերի հետ: *Ֆիզիկական դաստիարակության* սովետական համակարգում Մ. դիտվում է որպես մարդու բազմակողմանի ներդաշնակ զարգացման, օրգանիզմի ֆունկցիոնալ հնարավորությունների կատարելագործման միջոց: Այն ղեկավարվում և իրականացվում է մարզիկի և *մարզիչի* փոխադարձ կապով: Մ. ունի ֆիզիկական, տեխ., տակտիկական, հոգեբանական, ինտելեկտուալ և ինտեգրալ պատրաստման բաժիններ, յուրահատուկ ու հստակ պարբերացման, հաշվառման և վերահսկման համակարգ: Ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում Մ-ման ընթացքում օգտագործվում են հաշվիչ, ստուգիչ և ինֆորմացիոն սարքեր, որոնք նըպաստում են մարզման պրոցեսը գիտականորեն կազմակերպելուն: *Ֆ. Ղազարյան*

**ՄԱՐԹԱՅԱՆ** Հակոբ Վահանի, Դիլաչար (22.5.1895, Կ. Պոլիս — 12.9.1979, Կ. Պոլիս), լեզվաբան, թուրքագետ, մանկավարժ: Սովորել է Կ. Պոլսի ամերիկյան միջնակարգ դպրոցում, Ռոբերտ կոլեջում, եղել է այդ կոլեջի անգլ. դասատու, ապա՝ տնօրենը, ստացել ամերիկյան ակադեմիական «Մագիստրոս արվեստից» տիտղոս և պրոֆեսորի կոչում (1922): Մինչև 1932-ը Բեյրութում, Սոֆիայում և այլ վայրերում զբաղվել է հայագիտությամբ, ստանձնել է Բեյրութի առաջին հայկ. վարժարանի տնօրինությունը, հիմնել «Ռահվիրա» և «Մշակույթ» թերթերը (Սոֆիա), խմբագրել «Լույս» շաբաթաթերթը (Բեյրութ), հոդվածաշարերով հանդես եկել հայկ. մամուլում: Այդ շրջանում հրատարակվել են նրա «Առաջին փորձություն» պիեսը (1922), Լ. Շանթի «Հին աստվածներ»-ի անգլ. թարգմանությունը (1922), «Գրի ծագումը և տարածումը» (1928) և «Հաքեթաբանություն» (1929) աշխատությունները, անգլ. բանաստեղծներից թարգմանած «Ալբիոնի պարտեզներ» ժողովածուն (1929): 1932-ից աշխատել է Թուրքիայում, եղել թուրք լեզվաբանների միության գլխավոր մասնագետը: Տիրապետել է անգլ., թուրք., ֆրանս., հուն., իսպ., իտալ., ռուս., լեհ., բուլղ. և այլ լեզուների, ստացել Դիլաչար (լեզվի բանալի) անունը: 1936—50-ին Անկարայի համալսարանում դասախոսել է լեզվաբանության պատմություն և ընդհանուր լեզվաբանություն: Հեղինակ է թուրք. լեզվի տարբեր բնագավառներին վերաբերող մի շարք մենագրությունների: Ունի հայագիտական աշխատություններ («Համայնապատկեր հայ մշակույթի», 1966, «1500-ամյակի խոհեր», 1951, «Աստվածաշունչը և աշխարհաբարը», 1956 ևն) և բազմաթիվ հոդվածներ: 1942—70-ին եղել է թուրք. հանրագիտարանի տեխ. խորհրդատուն, ապա գլխավոր խմբագիրը: *Ս. Կուրտիկյան*

**ՄԱՐԻ** (այժմ՝ Թել-Հարիրի բլուր, Սիրիայում), հնագույն քաղաք-պետություն Եփրատի միջին հոսանքում: Առաջացել է մ. թ. ա. III հազարամյակի սկզբին: Մ-ով են անցել Միջագետքից միջերկրածովյան երկրներ ու Փոքր Ասիա գնացող առևտրական ճանապարհները: Մինչև մ. թ. ա. XXV դ. Մ. մշտական պատերազմներ է մղել *Շումերի* քաղաքների դեմ: Մ. թ. ա. XXIV—XXIII դդ. մտել է Աքքադի պետության, մ. թ. ա. XXII—XXI դդ.՝ Ուրի III դինաստիայի պետության, մ. թ. ա. XVIII դ. 1-ին կեսին՝ Ասորեստանի կազմի մեջ: Մ. թ. ա. 1758-ին կործանել է Բաբելոնի թագավոր Համմուրաբին:

Մ-ի գեղարվեստի հուշարձանները ներկայացնում են *Բաբելա-Ասուրական մշակույթի* ճյուղերից մեկը: Հնագիտական պեղումներից (սկսվել են 1933-ից) բացվել են մ. թ. ա. III հազարամյակ—մ. թ. ա. II հազարամյակի սկզբի աղյուսաշեն զիկկուրատ, քարե արձաններով և սաղափե խճանկարներով սրբարաններ, Իշտարի, Դահանայի տաճարները, քաղաքի թաղամասեր: Հին Արևելքի պալատական ճարտ-յան բնորոշ օրինակ է Զիմրիլիմ թագավորի (մ. թ. ա. XVIII դ.) պալատը. 260 սենյակներ, մի քանի ներքին բակեր, որմնանկարներով զարդարված արարողության դահլիճներ: Գտնվել են կնիքներ, քարե արձաններ, աղյուծների բրոնզե ֆիգուրներ, ինչպես և սեպագիր վավերագրերի պետ. արխիվը (ավելի քան 20 հզ. պնակիտ, որ վերաբերում են մ. թ. ա. XIX—XVIII դդ.):

**ՄԱՐԻ**, գավառ Մեծ Հայքի Պարսկահայք նահանգում: Հավանաբար համապատասխանում է Մարի գետի (այժմ՝ Բարանդուզ չայ) հովիտն ընդգրկող Մերգևերին:

**ՄԱՐԻ** (մինչև 1937-ը՝ Մերվ), քաղաք, Թուրքմենական ՍՍՀ *Մարիի մարզի* կենտ-

րոնը: 76 հզ. բն. (1980): Երկաթուղային հանգույց է: Կան մեքենաշինական, բամբակազտիչ գործարաններ, բրդի լվացման ֆաբրիկա, տնաշինական կոմբինատ, սննդի, կաշվի արդյունաբերություն, զորգագործություն, ՊՇԷԿ, բժշկ., մանկավարժական ուսումնարաններ, պատմա-հեղափոխական թանգարան, դրամատիկական թատրոն: Հիմնադրվել է 1884-ին: Մ-ից 30 *կմ* արլ. պահպանվել են հնագույն Մերվ քաղաքի ավերակները: Մ-ում ապրում են մեծ թվով հայեր:

**ՄԱՐԻ ԱՆՏՈՒԱՆԵՏ** (Marie Antoinette) (1755—1793), ֆրանսիական թագուհի, Ֆրանսիայի թագավոր Լյուդովիկոս XVI-ի կինը, ավստ. կայսր Ֆրանց I-ի դուստրը: Ֆրանս. մեծ հեղափոխության սկզբից ոգեշնչել է հակահեղափոխական դավերն ու օտարերկրյա ինտերվենցիաները: Միապետության տապալումից (1792-ի օգոստ. 10) հետո Մ. Ա. ձերբակալվել է և դատարանի որոշմամբ գլխատվել:

**ՄԱՐԻ ԹՅՈՒԴՈՐ** (Mary Tudor), Մ ա ր ի ա I (1516—1558), անգլիական թագուհի 1553—58-ին, Հենրի VIII-ի և Եկատերինա Արագոնցու դուստրը: Վերականգնել է կաթոլիկությունը (1554), որն ուղեկցվել է Ռեֆորմացիայի կողմնակիցների դաժան հալածանքներով (այստեղից էլ՝ նրա Մարիա Արյունարբու մականունը): 1554-ին ամուսնացել է Իսպանիայի թագաժառանգի (1556-ից Ֆիլիպ II թագավոր) հետ, որը հանգեցրել է կաթոլիկ Իսպանիայի հետ մերձեցման: Մ. Թ-ի քաղաքականությունը առաջ է բերել նոր ազնվականության ու նորելուկ բուրժուազիայի խիստ դժգոհությունը:

**ՄԱՐԻ ՆՎԱՐԴ** (Գ ա ր ա յ ա ն Մ ա ր ի Հ ո վ ս ե փ ի, 1853, Կ. Պոլիս —1885, Կ. Պոլիս), հայ դերասանուհի: 1869-ին Թ. Ֆասուլյաճյանի շրջիկ թատերախմբի հետ հյուրախաղերի է եղել Նոր Նախիջևանում, 1870-ական թթ. սկզբին հանդես է եկել Պ. Մաղաքյանի «Արևելյան թատրոնում», 1874—78-ին՝ Հ. Վարդովյանի «Օսմանյան թատրոնում»: Խաղացել է հիմնականում լիրիկական հերոսուհիների դերեր՝ հայ պատմա-հայրենասիրական ողբերգություններում, արևմտա-եվրոպական մելոդրամաներում ևն: 1881—82-ին հանդես է եկել Թիֆլիսի հայ թատերախմբում. դերերից են՝ Սոֆիա (Ա. Գրիբոյեդովի «Խելքից պատուհաս»), Ջեսիկա (Շեքսպիրի «Վենետիկի վաճառականը»), Մարքրիտ (Գ. Սունդուկյանի «Խաթաբալա»), Ազաֆիա Տիխոնովնա, Աննա Անդրեևնա (Ն. Գոգոլի «Ամուսնություն», «Ռևիզոր»): Հետագայում եղել է Մ. Մնակյանի թատերախմբի առաջատար դերասանուհին: Մ. Ն-ի լավագույն դերը համարվել է Մարգարիտ Գոթիեն (Ա. Դյումա-որդու «Կամելիազարդ տիկինը»): Մ. Ն-ի դերակատարումներին հատուկ են եղել հուզական հազեցվածությունը, պարզությունն ու անկեղծությունը: *Հ. Հովհաննիսյան*



Մարի Նվարդ



Մ ա ր ի Ն վ ա ր դ ը Քույր Թերեզայի դերում («Կամոլետտիի «Քույր Թերեզա»)

**ՄԱՐԻ ՍՏՅՈՒԱՐՏ** (Mary Stuart) (1542—1587), շոտլանդական թագուհի 1542 (փաստորեն 1561-ից)—67-ին: 1548—61-ին ապրել է Փարիզում, 1558-ին ամուսնացել ֆրանս. թագաժառանգի (1559-ից Ֆրանցիսկ II թագավոր) հետ: Այրիանալով՝ 1561-ին վերադարձել է Շոտլանդիա: Հավակնել է նաև անգլ. գահին՝ որպես Անգլիայի թագավոր Հենրի VII-ի ծոռը: Փորձելով կաթոլիկների օգնությամբ ամրապնդել իր իշխանությունը Շոտլանդիայում, առաջ է բերել կալվինականների դժգոհությունը, որը վերաճել է ապստամբության (1567): Մեղադրվելով իր երկրորդ ամուսնու՝ լորդ Դարնլիի սպանության մեջ, ստիպված հրաժարվել է գահից (որդու օգտին) և փախել Անգլիա, ուր Էլիզաբեթ թագուհու հրամանով բանտարկվել է, ապա մահապատժի ենթարկվել: Մ. Ս-ի՝ դրամատիկ իրադարձություններով հարուստ կյանքը դարձել է շատ գրողների (Ֆ. Շիլլեր, Ս. Ցվայգ) գրական ստեղծագործությունների սյուժե:

**ՄԱՐԻԱ ԹԵՐԵԶԱ** (Maria Theresia, 1717—1780), ավստրիական թագուհի 1740-ից: Հաջորդել է հորը՝ Կարլ VI-ին: Մինչև 1765-ը կառավարել է ամուսնու (կայսր Ֆրանց I), իսկ 1765-ից՝ որդու (Իոսիֆ II) հետ: Պետության կենտրոնացումն ուժեղացնելու նպատակով անց է կացրել բարեփոխումներ (վարչական, մաքսային ևն, հիմնել պետ. խորհուրդ), հովանավորել է արդյունաբերության և առևտրի զարգացումը: 1768-ին հրատարակել է նոր քրեական օրենսգիրք, 1776-ին վերացրել խոշտանգումները, ծեծը ևն: Յոթնամյա պատերազմում (1756—63) չի կարողացել Պրուսիայից ետ գրավել Սիլեզիան:

**ՄԱՐԻԱԿԱՆ ԻՆՔՆԱՎԱՐ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ**, (Մարիյսկի Ավտոնոմնի Սովետսկի Սոցիալիստիչեսկի Ռեսպուբլիկա), Մ ա ր ի ա կ ա ն ԻՍՍՀ, ՌՍՖՍՀ կազմում: Կազմավորվել է 1920-ի նոյեմբ. 4-ին, որպես ինքնավար մարզ, 1936-ի դեկտ. 5-ին վերակազմավորվել է ԻՍՍՀ-ի: Գտնվում է ՍՍՀՄ· եվրոպական մասի կենտրոնում, առավելապես Վոլգայի ձախափնյա մասում: Տարածությունը 23,2 հզ. $կմ^2$ է, բն.՝ 705 հզ. (1980): Բաժանվում է 14 վարչական շրջանի, ունի 4 քաղաք, 17 քտա: Մայրաքաղաքը՝ Յոշկար Օլա:

**Պետական կարգը**: Մարիական ԻՍՍՀ համաժողովրդական պետություն է, ինքնավար սովետական սոցիալիստական հանրապետություն: Գործող սահմանադրությունն ընդունվել է 1978-ի մայիսի 27-ին: Պետ. իշխանության բարձրագույն մարմինը միապալատ Գերագույն սովետն է և նրա Նախագահությունը: Գերագույն սովետը կազմում է հանրապետության կառավարություն՝ Մինիստրների խորհուրդ, ընտրում գերագույն դատարան: ՍՍՀՄ Գերագույն սովետի Ազգությունների սովետում Մարիական ԻՍՍՀ-ից ընտրվում է 11 դեպուտատ: Իշխանության տեղական մարմինները ժող. դեպուտատների քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական սովետներն են: Հանրապետության դատախազին նշանակում է ՍՍՀՄ գլխավոր դատախազը:

**Բնությունը**: Արլ-ում գետահովիտներով և ձորակներով կտրտված Վյատկայի Ուվալ բլրաշատ հարթավայրն է (բարձրությունը՝ մինչև 275 *մ*), որը դեպի արմ. աստիճանաբար ցածրանալով վերածվում է ընդարձակ, ճահճակալած Մարիական դաշտավայրի (50—100 *մ*): Հանդիպում են կարստային գոյացումներ: Հվ-արմ-ում Մերձվոլգյան բարձրության հս. ծայրամասն է (մինչև 198 *մ*): Օգտակար հանածոներից արդ. նշանակություն ունեն ապակու և սիլիկատային ավազները, շինաքարերը, տորֆը: Կլիման չափավոր ցամաքային է: Հունվարի միջին ջերմաստիճանը —13°C է, հուլիսինը՝ 19°C, տարեկան տեղումները՝ 450—500 *մմ*: Ջրագրական ցանցը խիտ է: Գլխավոր գետը Վոլգան է՝ Վետլուգա (նավարկելի), Ռուտկա, Մեծ Կոկշագա, Փոքր Կոկշագա, Իլետ (լողարկելի) վտակներով: Գերակշռում են ճմապոդզոլային, կավավազային և ավազային հողերը: Հանդիպում են նաև ճահճատորֆային, կարբոնատային հողեր, անտառային մոխրահողեր: Հանրապետության տարածքի կեսից ավելին անտառապատ է: Գերակշռում են փշատերև ծառերի արժեքավոր տեսակները: Կենդանիներից կան գայլ, գորշ արջ, աղվես, որմզդեղն, լուսան, նապաստակ, սկյուռ, զանազան թռչուններ: Ստեղծվել է Մարիական արգելավայրը:

**Բնակչությունը**: Բնակվում են *մարիներ*, ռուսներ, թաթարներ, չուվաշներ, ուկրաինացիներ և այլք: Բնակչության միջին խտությունը 1 $կմ^2$ վրա 30,3 մարդ է (1980): Քաղաքներն են Յոշկար Օլան, Վոլժսկը, Կոզմոդեմյանսկը, Զվենիգովոն:

**Պատմական ակնարկ**: Մարիական ԻՍՍՀ-ի տարածքում նախամարդը բնակվել է հին քարի դարի ժամանակներից: Մ. թ. V—X դդ. կազմավորվել է հին մարիական ազգությունը: IX—XII դդ. զարգացել են երկրագործությունը, որսորդությունը, արհեստներն ու առևտուրը: X—XII դդ. մարիները գտնվել են Վոլգա—Կամայան Բուլղարիայի տնտ. ու մշակութային ազդեցության ներքո, XIII դ. 30-ական թթ. ընկել են մոնղոլ-թաթարական լծի տակ: XV դ. մերձվոլգյան մարիները մտել են Կազանի խանության, հս-արմ. մարի-




ները՝ հս-արլ. ռուս. իշխանությունների, XVI դ. բոլորը միասին՝ Ռուսաստանի կազմի մեջ: XVI դ. 2-րդ կեսին կառուցվել են ռուս. քաղաքներ Կոկշայսկը, Կոզմոդեմյանսկը ևն, XVII դ. երկրամասում երևան են եկել ռուս կալվածատերերի տիրույթներ: Սակայն մարիների մեծամասնությունը հարկը՝ յասակը (բնահարկ) վճարում էր ցարական կառավարությանը: Մարի ժողովուրդը մասնակցել է XVII—XVIII դդ. (Ի. Բոլոտնիկովի, Ս. Ռազինի, Ե. Պուգաչովի) գյուղացիական պատերազմներին: Պետականացված մարիական հողերում սկսել են բնակություն հաստատել ռուս գյուղացիները:

XVIII դ. վերջից արագորեն զարգացան արհեստները, առևտուրը: XIX դ. 1-ին կեսին ավելացավ վարձու աշխատանքի վրա հիմնված ձեռնարկությունների թիվը: 1860-ական թթ. վերափոխումները պայմաններ ստեղծեցին կապիտալիզմի զարգացման համար: Ուժեղացավ գյուղացիության շերտավորումը. դարի վերջին գյուղացիության 2/3-ը չքավորներ էին: 1899-ին ստեղծվեց մարքսիստական առաջին խմբակը: 1905—07-ի հեղափոխության ժամանակ հուզումներ տեղի ունեցան Յուրինոյում, Զվենիգովի գետախորշում և նրա շրջակա գյուղերում: 1917-ի Փետրվարյան հեղափոխությունից հետո, ապրիլ—մայիսին, մի շարք քաղաքներում ստեղծվեցին սովետներ: 1917-ի դեկտ. 23-ին (1918-ի հունվ. 5-ին) սովետական իշխանություն հաստատվեց Ցարյովոկոկշայսկում (1919-ից՝ Կրասնոկոկշայսկ), դեկտ. 31-ին (1918-ի հունվ. 13-ին)՝ Կոզմոդեմյանսկում, 1918-ի կեսից՝ ամենուր: 1918-ի ամռանը երկրամասում բռնկեց հակահեղափոխական խռովություն, սակայն կարմիր բանակը մարի աշխատավորների օգնությամբ ճնշեց այն: 1918-ի հուլիսին ՌՍՖՍՀ Ազգությունների գործերի ժողկոմատին կից ստեղծվեց մարիների բաժին: 1920-ի հուլիսի 20—24-ին Կազանում կայացավ կոմունիստ մարիների համառուսաստանյան I կոնֆերանսը: 1920-ի նոյեմբ. 4-ին ստեղծվեց Մարիական Ինքնավար Մարզը, կենտրոնը՝ Կրասնոկոկշայսկ (1927-ից՝ Յոշկար Օլա): 1936-ի դեկտ. 5-ին Մարիական ԻՄ վերակազմվեց Մարիական ԻՍՍՀ-ի՝ ՌՍՖՍՀ-ի կազմում. ընդունվեց սահմանադրություն (1937, նորը՝ 1978-ին): Նախապատերազմյան հնգամյակներում հանրապետությունում սոցիալիզմը հիմնականում կառուցվեց, իրականացավ կուլտուրական հեղափոխությունը, մարի ժողովուրդը համախմբվեց որպես սոցիալիստական ազգ: Հայրենական մեծ պատերազմի տարիներին (1941—45) Մարիական ԻՍՍՀ-ից 44 ռազմիկ արժանացավ Սովետական Միության հերոսի կոչման, շքանշաններով և մեդալներով պարգևատրվեցին 14 հզ. աշխատավորներ: Հետպատերազմյան տարիներին հանրապետության տնտեսությունն ու մշակույթը հետագա վերելք են ապրում: Հանրապետությունը պարգևատրվել է Լենինի (1965), Հոկտեմբերյան հեղափոխության (1970) և Ժողովուրդների բարեկամության (1972) շքանշաններով:



Մարիական ԻՍՍՀ ՍՄԿԿ մարզկոմի և Մինիստրների խորհրդի շենքը Յոշկար Օլայում (1971, ճարտ. Ս. Ա. Կլեյմյոնով)

***Ժողովրդական տնտեսությունը***: Սովետական իշխանության տարիներին գյուղատնտեսության և արդյունաբերության զարգացման շնորհիվ հանրապետությունում ստեղծվել են արդյունաբերության նոր ճյուղեր և բարձր եկամտաբեր գյուղատնտեսություն:

Արդյունաբերության առաջատար ճյուղը մեքենաշինությունն ու մետաղամշակումն է, որի տեսակարար կշիռը արդ. արտադրանքի ընդհանուր ծավալում կազմում է ավելի քան 40%: Կարևոր գործարաններն են՝ «Էլեկտրաավտոմատիկա» (էլեկտրոնային պոտենցիոմետրեր), գործիքաշինական, կիսահաղորդիչ սարքերի, «Կոնտակտ», «Պոտենցիալ» (ռեզիստորներ), անտառային մեքենաշինության ևն: Ձեռնարկությունների մեծ մասը գտնվում է Յոշկար Օլայում և Վոլժսկում: Անտառարդյունաբերության հումքային բազան հանրապետության անտառներն են (կազմում են տարածքի 40%-ը): Արդյունաբերության կարևոր ճյուղերից է փայտամշակումը (թղթի-թաղանթանյութի և փայտամշակման կոմբինատներ Վոլժսկում): Արտադրվում են կահույք, փայ-

Յու. Ա. Գագարինի անվ. պողոտան Յոշկար Օլայում



տալյուր, տնաշինական մասեր, սառնարանային խցիկ, պարկետ են: Մարիական ԻՍՍՀ արհեստական կաշվի խոշորագույն արտադրողներից է: Կան տրիկոտաժի և կարի ֆաբրիկաներ, տնաշինական, ապակու, երկաթբետոնե իրերի, ասֆալտ-բետոնի գործարաններ, սննդարդյունաբերության ձեռնարկություններ, վիտամինների գործարան:

Գյուղատնտեսությունը: 1980-ին ցանքատարածությունները կազմել են 620,7 հզ. *հա*: Մշակում են հացահատիկ, կարտոֆիլ, տեխնիկական և կերային կուլտուրաներ: Անասնապահությունը ունի կաթնամսատու ուղղություն. 1980-ին կար 308,5 հզ. գլուխ խոշոր, 184,5 հզ. գլուխ մանր եղջերավոր անասուն, 299,8 հզ. խոզ: Զարգանում է թռչնաբուծությունը:

Տրանսպորտը: Երկաթուղիների երկարությունը 153 *կմ* է, կոշտ ծածկույթով ավտոճանապարհներինը՝ 1445 *կմ*: Վոլգա և Վետլուգա գետերի վրա կա նավարկություն: Հանրապետությունը օդային ուղիներով կապված է ՍՍՀՄ տարբեր մասերի հետ:

Մարիական ԻՍՍՀ ՍՍՀՄ զանազան շրջանների մատակարարում է տեխ. թուղթ, կիսահաղորդիչ սարքեր, սառնարանային սարքավորում, վիտամիններ, մետաղահատ գործիքներ, արհեստական կաշի են: Ստանում է վառելիք, արդ. հումք, թեթև արդյունաբերության ապրանքներ են:

**Առողջապահությունը**: Սովետական իշխանության տարիներին Մարիական ԻՍՍՀ-ում լրիվ վերացել է տրախոման, խիստ նվազել են վարակիչ հիվանդությունները: 1978-ին գործել է հիվանդանոցային ավելի քան 90 հիմնարկ՝ 8,5 հզ. մահճակալով (1000 բնակչին՝ 12,1 մահճակալ): Արտահիվանդանոցային օգնություն են կազմակերպել ամբուլատոր-պոլիկլինիկական մոտ 105 և գյուղական ֆելդշերամանկաբարձական մոտ 400 կետ: Աշխատել են 1,9 հզ. բժիշկ (370 բնակչին՝ 1 բժիշկ) և 7,0 հզ. միջին բուժաշխատող: Կա բժշկ. ուսումնարան: Կլենովոգորսկի և Կրասնոգորսկի հանքային ջրերն օգտագործվում են բուժիչ նպատակներով: Գործում են առողջարաններ, հանգստյան տներ:

**Ժողովրդական կրթությունը, կուլտուրլուսավորական և գիտական հիմնարկները**: 1914—15 ուս. տարում Մարիական ԻՍՍՀ-ի ներկայիս տարածքում գործում էր 507 հանրակրթական դպրոց (այդ թվում 502-ը՝ տարրական): Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություններ չեն եղել: 1979/80 ուս. տարում հանրապետությունում կար շուրջ 477 հանրակրթական դպրոց, 33 պրոֆտեխնիկական ուսումնարան, 13 միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություն, 3 բուհ՝ մարիական համալսարանը, Ա. Մ. Գորկու անվ. մարիական պոլիտեխնիկական և Ն. Կ. Կրուպսկայայի անվ. մարիական մանկավարժական ինստ-ները (Յոշկար Օլա):

1978-ին հանրապետությունում գործում էին 395 մասսայական գրադարան, 3 թատրոն, ֆիլհարմոնիա, Մարիական հանրապետական գավառագիտական (Յոշկար Օլա) և Լեռնամարիական շրջանային գավառագիտական (Կոզմոդեմյանսկ) են թանգարաններ, 503 ակումբային հիմնարկ, 373 կինոսարքավորում, ավելի քան 15 պիոներների պալատ և տուն:

1978-ի վերջին Մարիական ԻՍՍՀ-ում կար ավելի քան 10 գիտական հիմնարկ (ներառյալ բուհերը), այդ թվում՝ Մարիական ԻՍՍՀ Մինիստրների խորհրդին կից լեզվի, գրականության, պատմության և տնտեսագիտության մարիական ԳՀԻ (Յոշկար Օլա), թաղանթանյութի-թղթի արդյունաբերության համամիութենական ԳՀԻ-ի մարիական մասնաճյուղը (Վոլժսկ), Մարիական պետ. գյուղատնտ. փորձակայանը:

**Մամուլը, ռադիոհաղորդումները, հեռուստատեսությունը**: Հանրապետական թերթերն են՝ «Մարիյ կոմունա» («Մարիական կոմունա», 1918-ից, մարիերեն), «Մարիյսկայա պրավդա» («Марийская правда», 1921-ից), «Մոլոդոյ կոմունիստ» («Молодой коммунист», 1934-ից), «Յամդե լիյ» («Եղիր պատրաստ», 1933-ից, մարիերեն), հանդեսները՝ «Օնչիկո» («Առաջ», 1954-ից, մարիերեն), երգիծական «Պաչեմիշ» («Կրետ», 1957-ից՝ մարիերեն, 1958-ից՝ ռուս.), «Պոլիտիչեսկայա ինֆորմացիա» («Политическая информация», մարիերեն և ռուս.): Ռադիոհաղորդումները տրվում են մարիերեն և ռուս.: Հեռուստատեսության տեղական ծրագիրը 3-ժամյա է, հաղորդվում են նաև կենտրոնական հեռուստատեսության ծրագրերը:

**Գրականությունը**: Մարի ժողովրդի գրականությունն առաջացել է XX դ. սկզբին: Ազգային գրականության հիմնադիրներն են Ս. Չավայնը (1888—1942), Մ. Գերասիմով-Միկայը (1885—1944), Ն. Մուխինը (1890—1943) և ուրիշներ: Զարգացումն սկսվել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո: Առաջին տարիներին գերիշխել է պոեզիան: 1930-ական թթ. երևան են եկել վեպն ու վիպակը: Չավայնի «Ակպատիր» (1935) պատմական դրաման մարիական դրամատուրգիայի բարձրակետն է: Այդ շրջանում իր լավագույն դրամաներն է գրել Մ. Շկետանը (1898—1937): Նախապատերազմյան պոեզիան ներկայացնում են Միկլայ Կազակովը (ծն. 1918), Ի. Օսմինը (ծն. 1915), Մ. Մայնը (ծն. 1914), Ն. Իլյակովը (1913—67), Ա. Բիկը (ծն. 1915) և ուրիշներ: Հայրենական մեծ պատերազմի տարիներին առանձնահատուկ ուժով է հնչել պոեզիան (Ս. Վիշնևսկի, ծն. 1920, Կազակով, Մայն, Գ Մատյուկովսկի, ծն. 1926, Ա. Կանյուշկով, ծն. 1925): Ետպատերազմյան մարիական արձակը հարստացել է Ն. Լեկայնի (1907—60), Դ. Օրայի (1901—50), Իլյակովի, Յա. Էլեկսեյնի (1893—1965), Վ. Իվանովի (1923—1971) և այլոց վիպակներով ու վեպերով, ժամանակակիցը ներկայացնում են Ա. Միչուրին-Ազմեկեյը (ծն. 1912), Վ. Կոսոռոտովը (ծն. 1930), Ա. Ասաևը (ծն. 1912), Ա. Յուզիկայնը (ծն. 1929): Պոեզիայում ժողովրդականություն են վայելում Մ. Յակիմովը (ծն. 1929) և Վ. Կոլումբը (ծն. 1935): Հայտնի են Ս. Նիկոլաևի (ծն. 1908), Ն. Արբանի (ծն. 1912), Ա. Վոլկովի (ծն. 1923), Կ. Կորշունովի (ծն. 1929), Ն. Ռիբակովի (ծն. 1932) դրամաները:


Միկրոշրջան Յոշկար Օլայի կենտրոնական մասում

**Ճարտարապետությունը և կերպարվեստը**: Մարիական ԻՍՍՀ տարածքում հայտնաբերվել են մ. թ. ա. II հազարամյակի կեսի քարե և կավե քանդակագործական պարզունակ կենդանապատկերներ, բրոնզի դարի մետաղյա զարդեր: Ժող. ճարտարապետությանը բնորոշ են հատակագծում П-աձև բակերով, գերանակապ խրճիթը, ամառային խոհանոցը («կուդո»), մառանը: Մարիների ժող. արվեստում հնուց տարածված են փայտի քանդակազարդումը, ասեղնագործությունը, նախշավոր ոստայնանկությունը, կեչու կեղևից հյուսածո ու դրոշմազարդ իրերի պատրաստումը, ավելի ուշ՝ մետաղի զարդապատումը, ճկածո և հյուսածո կահագործությունը: Զարդապատկերներում զուգակցված են երկրաչափական, բուսական, կենդանական մոտիվները: Սովետական իշխանության հաստատմամբ քաղաքները կառուցապատվել են ըստ գլխավոր հատակագծերի: 1930-ական թվականներից կառուցվել են քարե մոնումենտալ շենքեր (վարչական շենք, այժմ՝ համալսարան, 1936, ճարտ. Ա. Զ. Գրինբերգ, Մ. Շկետանի անվ. մարիական երաժշտա-դրամատիկական թատրոնը, 1960, ճարտ-ներ՝ Պ. Ա. Սամսոնով, Մ. Ֆ. Նի, ՍՄԿԿ մարզկոմի և հանրապետության Մինիստրների խորհրդի շենքը, 1971, ճարտ. Ս. Ա. Կլեյմյոնով, բոլորը՝ Յոշկար Օլայում), հյուրանոցներ, կինոթատրոններ, բնակելի տներ են: 1941-ին կազմակերպվել է ՍՍՀՄ ճարտարապետների միության Մարիական բաժանմունքը:

1920-ական թթ. կեսից սկզբնավորվել է պրոֆեսիոնալ կերպարվեստը: Ստեղծվել են Պետ. ազատ արվեստանոցներ (1920—1923), 1926-ին՝ ԱԽՌՌ-ի մասնաճյուղ, 1940-ին՝ «Մարիյ խուդոժնիկ» ընկերությունը, 1961-ին՝ ՌՍՖՍՀ նկարիչների միության Մարիական բաժանմունքը (1968-ից՝ Մարիական ԻՍՍՀ նկարիչների միություն): Ճանաչված նկարիչներից են Բ. Ի. Օսիպովը, Ի. Մ. Պլանդինը, Ի. Ի. Մամաևը, Ա. Ս. Պուշկովը, Ա. Ի. Բուտովը, Յու. Ս. Բլեկովը, Ա. Պ. Զարուբինը, Պ. Տ. Գորբունցովը, Ն. Պ. Կարպովը, քանդակագործներից՝ Ֆ. Պ. Շաբերդինը, Օ. Ա. Դեդովը, Վ. Մ. Կոզմինը, գրաֆիկներից՝ Լ. Լ. Ակազեևը, Ա. Գ. Օռլովը, բեմանկարիչներից՝ Ա. Ա. Բրովցինը, մոնումենտալ-դեկորատիվ արվեստի ներկայացուցիչներից՝ Ա. Ֆ. Նովոսյոլովը, Ի. Պ. Մյասնիկովը:

**Երաժշտությունը**: Մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը մարիների երաժշտական մշակույ-

թը միայն ժող., հիմնականում՝ միաձայն, երգային ստեղծագործությունն էր: Երգերին բնորոշ են պենտատոնիկան և 2-մաս քառյակային ձևը: Ժող. երաժշտական գործիքներից են՝ կուսլե (գուսլի), շուվիր (պարկապզուկ), շիյալտիշ (սրինգ), կովիժ (2-լարանի ջութակ), տումիր (թմբուկ) ևն: Ժող. գործիքներով կատարվում են հիմնականում պարեղանակներ: 1908-ին Ա. Կ. Ապտրիևը կազմել է մարիական ժող. երգերի առաջին ժողովածուն: Մարիական երգեր գրառել և հրատարակել են Վ. Մ. Վասիլևը, Ի. Ս. Պալանտայը, Յա. Ա. Էշպայը և ուրիշներ: Պրոֆեսիոնալ բազմաձայն երաժշտության հիմնադիրն է առաջին երգչախմբի կազմակերպիչ, երգերի, խմբերգերի հեղինակ Ի. Ս. Պալանտայը (Կլյուչնիկով): Մարիական երաժշտության զարգացման գործում մեծ ավանդ է ներդրել Ա. Յա. Էշպայը, որը, ստեղծագործաբար օգտվելով ժող. մելոսից, հեղինակել է սիմֆոնիկ պարեր, դաշնամուրային կոնցերտներ, սիմֆոնիաներ: Առաջին ազգային բալետի («Անտառային լեգենդ», 1971) հեղինակն է Ա. Բ. Լուպովը, առաջին ազգային օպերան («Ակպատիր», բեմ. 1963) գրել է Է. Ն. Սապաևը: Մարիական ԻՍՍՀ-ում գործում են (1975)՝ Մ. Շկետանի անվ. երաժշտա-դրամատիկական (1968-ից) թատրոնը, Երգչախմբային ընկերությունը (1958), ֆիլհարմոնիան (1939), մարիական երգի-պարի անսամբլը (1939), ժող. ստեղծագործության տունը (1946), ՌՍՖՍՀ կոմպոզիտորների միության Մարիական բաժանմունքը (1940), երաժշտական ուսումնարանը (1937), 31 երաժշտական դպրոց:

**Թատրոնը**: Մինչև սովետական իշխանության հաստատումը մարիերեն տրվել է միայն մեկ ներկայացում (1910): Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո սկսել է զարգանալ թատերական ինքնագործունեությունը: 1919-ին Տինիշ Օսիպի «Հանուն օրենքի» ներկայացումով Յոշկար Օլայում բացվել է մարիների շրջիկ թատրոնը: Պրոֆեսիոնալ թատրոնի կազմավորման գործում կարևոր դեր են խաղացել ռուս դասականների, սովետական, այդ թվում՝ մարիական (Ս. Չավայն, Մ. Շկետան), դրամատուրգների պիեսների բեմադրությունները: 1929-ին ստեղծվել է Մարիական պետ. թատրոնը (1948-ից՝ Մ. Շկետանի անվ., 1968-ից՝ Մարիական երաժշտա-դրամատիկական թատրոն): Լավագույն ներկայացումներից են՝ Ս. Նիկոլաևի «Սալիկա» (1938), Ն. Արբանի «Յանլիկ Պասետ» (1944), «Երիտասարդ գվարդիա» (1946, ըստ Ֆադեևի), Գոգոլի «Ռևիզոր» (1952), Ի. Պոպովի «Ընտանիք» (1962): Գործում են նաև Հանրապետական ռուս. դրամատիկական (1936) և տիկնիկային (1943) թատրոնները:

*Գրկ.* Очерки истории Марийской АССР. (С древнейших времен до Великой Октябрьской социалистической революции), Йошкар-Ола, 1965; Очерки истории Марийской АССР (1917—1960), Йошкар-Ола, 1960; Водовозов С., Марийская АССР. Экономико-географический очерк, Йошкар-Ола, 1956; Очерки истории марийской литературы, ч. 1, Йошкар-Ола, 1963, ч. 2, նույն տեղում, 1960; Новоселова Л., 50 лет советской марийской музыки, «Музыкальная жизнь», 1970, № 24; История советского драматического театра, т. 1—6, М., 1966—71.

**ՄԱՐԻԱՄ** (ծն. և մահ. թթ. անհտ.), հայ գրիչ և ծաղկող: 1456-ին Ջուղայում ընդօրինակել և ծաղկել է Գրիգոր Տաթևացու «Գիրք քարոզութեան» ձեռագիրը (հայտնաբերել է սփյուռքահայ արվեստաբան Ա. Երեմյանը 1946-ին, Իրանի Սպահանի նահանգի Չարմահալ գավառի այդ ժամանակ դեռևս հայաբնակ Մամուռան գյուղում): Ձեռագրի տարբեր ոճերով ու բովանդակությամբ մանրանկարները (կատարման նրբությամբ և բանաստեղծական պատկերավորությամբ ուշագրավ է 16-րդ էջի խորանը), ճոխ երանգներով լուսանցազարդերը, թռչնազարդերը և գեղագրերը արտացոլում են XV դ. Հին Ջուղայի նկարչական դպրոցին բնորոշ հատկանիշները: Մ. XV դ. միակ նկարչուհին է, որի ստեղծագործությունների նմուշները պահպանվել են:

*Գրկ.* Երեմյան Ա., XV դարի մի անհայտ նկարչուհի, «Էջմիածին», 1952, № 7:

**ՄԱՐԻԱՄ**, լեռներ Հայկական լեռնաշխարհում, Կոպա (Կապույտ) լեռներից հարավ, Եփրատ գետի և նրա ձախակողմյան վտակ Դերջանի միջև: Երկարությունը մոտ 45 *կմ* է, բարձրությունը՝ մինչև 2600 *մ* (Մարիամ լեռ): Կազմված են կրաքարերից, բյուրեղային թերթաքարերից և ուլտրահիմքային ապարների ներժայթուկներից:

**ՄԱՐԻԱՄ ԱՍՏՎԱԾԱԾԻՆ**, Աստվածամայր, Տիրամայր, Կույս Մարիամ, ըստ քրիստոնեական ավանդության՝ Հիսուս Քրիստոսի մայրը: Ավետարանիչները Մ-ին անվանում են Հովակիմի և Աննայի դուստրը, Հովսեփի կինը, որից ծնվել են նաև այլ զավակներ: Մ-ի պաշտամունքը ձևավորվել է բնության զարթոնքն ու պտղաբերությունը խորհրդանշող նախաքրիստոնեական դիցամայրերի (*Իսիդա*, *Իշտար*, *Մա*, *Կիբելա* և ուրիշներ) պաշտամունքների ազդեցությամբ: Քրիստոնեական աստվածաբանները IV դ. Մ-ին հռչակեցին «անարատ կույս»: Եփեսոսի Տիեզերական երրորդ ժողովը (431) Մ-ին պաշտոնապես ճանաչեց աստվածամայր, որի երկրպագությունն այնուհետև տարածվեց քրիստոնեական աշխարհում, մանավանդ կաթոլիկների մեջ: Մ-ին նվիրվեցին բազմաթիվ տաճարներ, սրբապատկերներ, նրա պատվին սահմանեցին տոներ ևն: 1854-ին կաթոլիկ եկեղեցին ընդունեց Մ-ի «անարատ հղիության», 1950-ին՝ «երկինք համբարձվելու» մասին դոգմաները, իսկ 1964-ին Պողոս VI պապը նրան հռչակեց «եկեղեցու մայր»:

Միջնադարյան արվեստում տարածված էր Մ-ի կերպավորումն իր մանկան հետ: Վերածննության դարաշրջանում ստեղծվել են Ս. Բոտտիչելլիի, Լեոնարդո դա Վինչիի, Ռաֆայելի և այլոց մեծ կտավները՝ նվիրված Մ-ի կերպարին:

**ՄԱՐԻԱՄ-ՂՈՒԿԱՍՅԱՆ ՕՐԻՈՐԴԱՑ ԴՊՐՈՑ**, Շուշիում, հիմնվել է 1864-ին, Պ. Շանշյանի, Պ. Պողոսյանի ու տեղացի Հախումյան ամուսինների ջանքերով: Սկզբում գործել է Հախումյանների սեփական բնակարանից հատկացված հարկաբաժնում: Տեսչուհին է ընտրվել Մ. Հախումյանը: Նպատակն էր պատրաստել լուսավորյալ վարժուհիներ և մայրեր: Ուսուցումը տարվել է հայերեն: Ավանդվել են հայոց լեզու, ռուսաց լեզու, հայոց պատմություն, թվաբանություն, աշխարհագրություն, վայելչագրություն, ձեռագործ, նկարչություն, երգեցողություն: Մի քանի տարի գործելուց հետո փակվել է: Վերաբացվել է 1876-ին, Ա. Մեղրակյանի ջանքերով, Հռիփսիմյան օրիորդաց դպրոց անվամբ: Հետագայում նորից կրել է Մարիամյան անունը: 1877-ին ունեցել է 4 ուսուցիչ, 70 աշակերտուհի: 1884-ից անցել է միջնակարգ դասընթացի (13 ուսուցիչ, 171 աշակերտ): 1885-ին փակվել, 1886-ին վերաբացվել է որպես երկդասյան իգական դպրոց: 1888—89 ուս. տարում ունեցել է 199 աշակերտուհի: Ուս. առարկաների թվում ավելացել են կրոնն ու բնական պատմությունը: 1908—09 ուս. տարում ունեցել է 5 բաժանմունք՝ 218 սովորողով: 1913-ին շուշեցի Ղուկասյան եղբայրները ի հիշատակ իրենց հանգուցյալ քրոջ՝ Մարիամի, տեղի օրիորդաց դպրոցին հատկացրել են 200000 ռ., Շուշիում գտնված իրենց տունը (40 հզ. ռ. արժողությամբ), և դպրոցը կոչվել է Մարիամ-Ղուկասյան: Բոլոր առարկաները դասավանդվում էին հայերեն, բացի ռուսաց պատմությունից և աշխարհագրությունից: 1915-ին ուներ 320 աշակերտ: 1917-ին լրիվ միջնակարգ դպրոց էր: Գործել է մինչև 1920-ը:

**ՄԱՐԻԱՄՅԱՆ ՕՐԻՈՐԴԱՑ ԴՊՐՈՑ**, Թիֆլիսում, հիմնվել է 1868-ին, Մողնու թաղամասի նորաշեն Ս. Աստվածածին եկեղեցուն կից, *Ստեփան* Ստեփանյանի (Խ. Ստեփանե) նախաձեռնությամբ և մի շարք մտավորականների աջակցությամբ: Տեղավորված էր Լոռիս-Մելիքովի տանը: Միդասյան էր, ուներ 26 աշակերտուհի: Առաջին վերակացուն Փեփրոնյա Տեր-Հովհաննիսյանն էր, տեսուչը՝ Խ. Ստեփանեն: Հիմնականում պահվել է եկեղեցու եկամուտներով: Ավանդվել են կրոն, հայոց լեզու, պատմություն, ռուսաց լեզու, ֆրանս., թվաբանություն, երգ, վայելչագրություն, նկարչություն, ձեռագործ, մարմնամարզություն: Տեսուչներ են եղել նաև Հ. Չիգանյանը, Գ. Հովհաննիսյանը, Գ. Արծրունին: Դասավանդել են Ն. Ալադաթյանը, Ջ. Գրիգորյանը, Մ. Սալամբեկյանը, Հ. Սուզանաճյանը, Գ. Քաթանյանը և ուրիշներ: 1878-ին հոգաբարձու Գ. Իզմիրյանը եռահարկ շենք է նվիրել դպրոցին: Ն. Սողալյանի տեսչության օրոք (1896) դպրոցն ուներ երեք բաժանմունք (105 աշակերտուհի): Ցարական կառավարությունը մի քանի անգամ փակել է հայկ. մյուս դպրոցների հետ միասին: Գոյատևել է մինչև 1920-ը:

*Ի. Ներսիսյան*

**ՄԱՐԻԱՆՅԱՆ ԱՆԴՈՒՆԴ**, Համաշխարհային օվկիանոսի ամենախոր իջվածքը: Գտնվում է Խաղաղ օվկիանոսի արմ. մասում, Մարիանյան կղզիներից հվ-արլ.: Երկարությունը 1500 *կմ* է: Ունի V-աձև կտրվածք, թեք լանջեր, հարթ հատակ (1—5 *կմ* լայնությամբ), բաժանված է մի քանի մեկուսացված իջվածքների (8—11 *կմ* խորությամբ): Առավելագույն խորությունը 11022 *մ* է: Մ-ի խորությունը չափել է սովետական «Վիտյազ» հետազոտական նավը, 1957-ին:

**ՄԱՐԻԱՆՅԱՆ ԿՂԶԻՆԵՐ** (Marianas Islands, Իսպանիայի թագավոր Ֆիլիպ IV-ի կնոջ անունով), կղզիների խումբ Խաղաղ օվկիանոսում, Միկրոնեզիայում: Բաղկացած են 15 մեծ և մի քանի փոքր կղզիներից ու խութերից: Առաջացնում են հս. և հվ. շղթաներ: Տարածությունը՝ ավելի քան 1,1 հզ. *կմ²*, բն. 100 հզ. (1974): Գուամ կղզին ԱՄՆ-ի տիրույթն է, մնացած կղզիները (600 *կմ²* տարածությամբ, մոտ 13,4 հզ. բն., 1972) ՄԱԿ-ի խնամարկյալ տերիտորիաներ են և կառավարվում են ԱՄՆ-ի կողմից: Ունեն հրաբխային և կորալային ծագում, կան գործող հրաբուխներ, ֆոսֆորիտների, ծծմբի, մանգանի, երկաթի հանքավայրեր: Բարձրությունը մինչև 965 *մ* է, կլիման և բուսականությունը՝ արևադարձային: Մշակում են շաքարեղեգ, կոկոսյան արմավենի, բանան, բամբակենի, ցիտրուսներ: Զբաղվում են անասնապահությամբ, ձկնորսությամբ: ԱՄՆ-ի ռազմական բազաներն են: Մ. կ. հայտնագործել է Ֆ. *Մագելանը*, 1521-ին:

**ՄԱՐԻԱՆՍԿԵ ԼԱԶՆԵ** (չեխ. Mariánske Lázně), քաղաք Չեխոսլովակիայում, Չեխական Սոցիալիստական Հանրապետությունում, Արևմտա-Չեխական մարզում: 14,6 հզ. բնակիչ (1974): Գտնվում է Չեխական անտառի ստորոտում, 600 *մ* բարձրության վրա: Բալնեոլոգիական բուժավայր է, Կարլովի Վարիից 40 *կմ* հվ.: Ամառը չափավոր տաք է (հուլիսի միջին ջերմաստիճանը՝ 15,9°C), ձմեռը՝ մեղմ (հունվարի միջին ջերմաստիճանը՝ —3-ից —7°C), տարեկան տեղումները՝ 750 *մմ*: Բուժիչ միջոցներն են՝ ածխաթթվային հանքային աղբյուրները (մոտ 40), տորֆացեխաբուժությունը: Բուժվում են միզուղիների, շնչառական օրգանների ոչ տուբերկուլոզային բնույթի, մաշկային, ծայրամասային նյարդային համակարգի հիվանդություններով և նյութափոխանակության խանգարումներով տառապողները: Գործում են առողջարաններ, ցեխաբուժարաններ, ըմպելասրահներ:

**ՄԱՐԻԱՏԵԳԻ** (Mariátegui) Խոսե Կարլոս (1895—1930), պերուական քաղաքական գործիչ, հասարակագետ, գրաքննադատ: 1918-ից մասնակցել է բանվորական շարժմանը, 1919-ին արտաքսվել երկրից, մեկնել Եվրոպա: Ներկա է եղել Իտալիայի կոմկուսի հիմնադիր համագումարին (1921) և 1922-ի Ջենովայի կոնֆերանսին: Վերադառնալով Պերու (1923)՝ պրոպագանդել է մարքսիզմ-լենինիզմի գաղափարները: Առաջիններից մեկը տվել է Լատինական Ամերիկայի պատմության և մշակույթի մարքսիստական վերլուծությունը: Մ. նպաստել է Լատինական Ամերիկայում սովետական գրականության ժողովրդականացմանը: 1926-ից հրատարակել է «Ամաուտա» («Amauta», մինչև 1930-ը) հանդեսը, որի շուրջ համախմբել է մայր ցամաքի մշակույթի առաջադեմ գործիչներին, 1928-ից՝ «Լաբոր» («Labor») բանվորական թերթը: 1928-ին հիմնել է Պերուի կոմկուսը (մինչև 1930-ը կոչվել է սոցիալիստական), եղել նրա առաջին գլխավոր քարտուղարը:

**ՄԱՐԻԵՍ** (Marîes) Լուի (19.8.1876, Փարիզ —18.11.1958, Շանտիյի), ֆրանսիացի հայագետ, բանասեր: Տիրապետել է լատիներենին, հին և նոր հունարենին, եբրայերենին, ռուսերենին, հայերենին: Աշակերտել է Ա. Մեյեին, Ֆ. Մակլերին, Հ. Փերնոյին, Պ. Բուայեին: Եղել է Վենետիկի Մխիթարյան միաբանության ճեմարանի անդամ (1934-ից): 1926-ին Փարիզի Կաթոլիկական ինստ-ում բացել է դասական հայերենի ամբիոն, որը ղեկավարել է 20 տարի, միաժամանակ դասավանդել է Արևելյան կենդանի լեզուների ազգային դպրոցում (1928-ից): 1928-ին լույս է ընծայել «Ուսումնասիրություն Եզնիկի մոտ գոյություն ցույց տվող մի քանի անունների և բայերի մասին» աշխատությունը, ուր Մ. լուսաբանում է մի քանի լեզվաբանական ու բանասիրական խնդիրներ: «Հայերենի ցոյական անցյալ կատարյալի և ստորադասականի կազմության մասին» (1931) ուսումնասիրության մեջ Մ. անդրադարձել է հայերենի խոնարհման մի քանի հարցերի: Թարգմանել և ծանոթագրել է Եզնիկ Կողբացու «Հաղագս աստծո»-ն («Եղծ աղանդոցը»-ը), որը հրատարակել է Շ. Մերսիեն 1960-ին: Հայագիտական հոդվածներով հանդես է եկել հայ («Հանդես ամսօրյա», «Հանդես հայագիտության») և ֆրանս. պարբերական մամուլի էջերում:
*Խ. Կարաղեզյան*

**ՄԱՐԻԻ ՄԱՐԶ**, Թուրքմենական ՍՍՀ կազմում: Կազմվել է 1970-ի դեկտ. 14-ին: Գտնվում է հանրապետության հվ-արլ-ում: Տարածությունը 86,8 հզ. *կմ²* է, բն. 647 հզ. (1980): Բաժանվում է 10 վարչական շրջանի, ունի 4 քաղաք, 16 քտա, կենտրոնը՝ *Մարի*: Մ. մ. պարգևատրվել է Լենինի շքանշանով:

**Բնությունը:** Մ. մ. գտնվում է Թուրանի դաշտավայրի հվ-արլ-ում, Կարակումներ անապատի սահմանում: Մակերևույթը ալիքավոր, դեպի հս. թույլ թեքությամբ հարթավայր է: Հս-ում է գտնվում Ունգուզի թաքիրա-աղուտային իջվածքը, հվ-ում և հվ-արլ-ում՝ Կենտրոնական Կարակումները (մինչև 150—300 *մ* բարձրությամբ): Թեջենի գետից արմ. Կոպետդաղի նախալեռնային հարթավայրերը (50—350 *մ*) միացնում են Պարոպամիզի նախալեռները Բադխիզի և Կարաբիլի բարձրությունների հետ: Կլիման ցամաքային է, չոր: Հունվարի միջին ջերմաստիճանը —2°C-ից 4°C է, հուլիսինը՝ 28°C-ից 32°C, տարեկան տեղումները՝ 100—300 *մմ*: Հիմնական գետերն են Մուրղաբը (Կաշան և Կուշկա վտակներով) և Թեջենը, որոնց վրա կառուցված են ջրամբարներ: Մարզի տարածքը արլ-ից արմ. կտրում անցնում է Լենինի անվ. Կարակումի ջրանցքը (նավարկելի է Ամուդարյայից մինչև Մարի քաղաքը): Գերակշռում են ավազաանապատային և մոխրագույն հողերը, օազիսներում՝ ալյուվիալ, տեղ-տեղ՝ աղակալված հողերը: Կան նաև թաքիրանման, բաց մոխրագույն հողեր ու աղուտներ: Ավազուտների համար բնորոշ է տիպիկ անապատային բուսականությունը՝ սպիտակ և սև սաքսաուլը, ավազային ակացիան, խոտաբույսերը, էֆեմերներն են: Կոպետդաղի նախալեռնային հարթավայրում տարածված են աղուտներով օշինդրա-շյուղախոտային տափաստաններ, Բադխիզում և Կարաբիլում՝ խոտասեզային բուսականություն, Մուրղաբի հով-



տում՝ ողողվող անտառներ (տուգայներ): Բաղխիզի արգելավայրում կան պիստակի պուրակներ և 60 տեսակ էնդեմիկ բույսեր: Կենդանիներից անապատում հանդիպում են ջեյրան, գայլ, աղվես, բորենի ևն, Մուրղաբի հովտում՝ վագրակատու, Բաղխիզի արգելավայրում՝ վայրի խոյ, ընձառյուծ ևն: Բազմաթիվ են կրծողները, սարդանմանները, սողունները, թռչունները:

**Բնակչությունը**: Մ. մ-ում բնակվում են թուրքմեններ, ռուսներ, հայեր, ղազախներ, բելուջներ, թաթարներ, ուկրաինացիներ և այլք: Միջին խտությունը 1 $կմ^2$ վրա 7,5 մարդ է, քաղաքային բնակչությունը՝ 33% (1980): Քաղաքներն են Մարին, Բայրամ Ալին, Թեջենը, Իոլոտանը, Կուշկան:

**Տնտեսությունը**: Մ. մ. Թուրքմենական ՍՍՀ բամբակագործական և կարակուլաբուծական գլխավոր շրջանն է՝ զարգացած բամբակազտիչ, թեթև, սննդի արդյունաբերությամբ և նոր ձևավորվող գազաքիմիական համալիրով: Էներգետիկան հիմնված է տեղական գազի վրա: 1960-ական թթ. հայտնաբերած նավթի, գազի խոշոր հանքավայրերի շնորհիվ մարզը դարձավ գազ արդյունահանող շրջան: Գործում է Մարիի ՊՇԷԿ-ը: Կան մեքենաշինական գործարան, շինանյութերի, մսի-կաթի արտադրություն, բամբակազտիչ, բրդի լվացման և մանածագործական-գործվածքային, կարի, կոշիկի, կաշվի, գորգագործական ձեռնարկություններ, յուղի-ճարպի կոմբինատ, գինեգործություն:

**Գյուղատնտեսության** հիմնական ճյուղերն են բամբակագործությունը, կարակուլաբուծությունը, պտղաբուծությունը: Հողագործությամբ զբաղվում են Մուրղաբի և Թեջենի ոռոգվող օազիսներում: Մ. մ-ում կա 116 կոլտնտեսություն, 21 սովետական տնտեսություն (1973): Անասնապահության մեջ գերակշռում են կարակուլաբուծությունը, ուղտաբուծությունը, մսակաթնատու անասնապահությունը և թռչնաբուծությունը: Զարգացած է շերամապահությունը: Երկաթուղիները ավելի քան 700 $կմ$ են, ավտոճանապարհները՝ 2528 $կմ$ (1972): 1972—73 ուս. տարում Մ. մ-ում գործում էր 426 հանրակրթական դպրոց, 8 պրոֆտեխնիկական ուսումնարան, 4 միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություն: 1972-ին կար 322 գրադարան, պատմահեղափոխական թանգարան, դրամատիկական թատրոն, 239 ակումբ, 184 կինոկայանք, պիոներների պալատ, հեռուստակայան, մարզային 2 թերթ:

1973-ին կար 87 հիվանդանոցային հիմնարկություն, 1000 բժիշկ: Մ. մ-ում է Բայրամ Ալի առողջարանը:

**ՄԱՐԻԻՆՅԱՆ ԹԱՏՐՈՆ**, տես *Լենինգրադի օպերայի և բալետի թատրոն*:

**ՄԱՐԻՆԵ ԵԿԵՂԵՑԻ** (Ս. Մ ա ր ի ա ն ե, Ս. Մ ա ր ի ա մ), հայկական ճարտարապետական հուշարձան ՀՍՍՀ Աշտարակ քաղաքի հյուսիս-արևելքում: Կառուցվել է 1281-ին, դարչնագույն սրբատաշ տուֆից: Հատակագծում ներքուստ խաչաձև (արլ. երկու կրկնահարկ ավանդատներով, արմ. խաչաթևից բացվող զույգ սենյակներով), արտաքուստ ուղղանկյուն (11,45 $մ\times$ $\times$8,88 $մ$) գմբեթավոր կառույց է: Մուտքերը արմ-ից և հվ-ից են: Մ. ե. ունի շեշտված վերձիգ համաչափություններ, ճակատների միանման, պարզ մշակում: Հարդարանքից ուշագրավ են պատուհանների կիսաշրջանային հատվածքի քառանկյուն պսակաձևերը՝ խաչաձև դասավորված եռաթև հավելումներով: Առագաստային փոխանցումով գմբեթի թմբուկը ներքուստ շրջանաձև է, արտաքուստ՝ տասանիստ: Հվ. խաչաթևի կտուրի զանգաշտարակը 1838-ի գործ է: Շուրջը պահպանվել են խոշոր, անմշակ բազալտից պարսպի մնացորդներ:



Մարինե եկեղեցին (1281) հարավ-արևելքից




Մարինե եկեղեցու հատակագիծը

*Գրկ.* Ա ր բ ա հ ա մ յ ա ն Վ., Հայկական ՍՍՀ պատմական հուշարձանները, Աշտարակի շրջան, Ե., 1940: Я р а л о в Ю. С., Аштарак, М., 1947. *Գ. Շախկյան*

**ՄԱՐԻՆԵԼՅՈ**, Մ ա ր ի ն ե լ յ ո ի Վ ի դ ա ու ր ր ե տ ա (Marinello y Vidaurreta), Խուան (1898—1977), Կուբայի քաղաքական ու հասարակական գործիչ, գրականագետ, հրապարակախոս: Ավարտել է Հավանայի համալսարանը, 1962—1963-ին նրա ռեկտորն էր: 1937-ին եղել է հանրապետական Իսպանիայում, բանաստեղծ Գիլիենի հետ հրատարակել «Հանրապետական Իսպանիայի մարդիկ» (1938) ռեպորտաժների ժողովածուն: 1938-ից կուսակցական ղեկավար աշխատանք է կատարել: 1965-ից՝ Կուբայի կոմկուսի Կենտկոմի անդամ: Մ. եղել է կոնգրեսի դեպուտատ (1942—44), սենատոր (1944—46), սենատի փոխնախագահ (1946—48): 1950-ին լույս է ընծայել «Ճանապարհորդություն ՍՍՀՄ և ժողովրդական դեմոկրատիայի երկրներ» ուղեգրությունների գիրքը: Մ-ի հիմնական ստեղծագործությունը գրաքննադատական հրապարակախոսությունն է: Նա հանդես է եկել որպես Կուբայի և Լատինական Ամերիկայի արվեստի ազգային ինքնատիպության, սոցիալական ուղղվածության տեսաբան ու պրոպագանդիստ: Առանձնահատուկ տեղ են գրավում *Խ. Մարտիի* մասին գրած աշխատությունները: «Ժամանակակիցներ: Նոթեր և հուշեր...» (1964) գրքում պատկերել է Լատինական Ամերիկայի և Եվրոպայի մշակույթի ականավոր գործիչների: 1963-ից Կուբայի ներկայացուցիչն էր ՅՈՒՆԵՍԿՕ-ում: 1950-ից՝ Խաղաղության համաշխարհային խորհրդի, 1966-ից՝ նրա նախագահության անդամ: Պարգևատրվել է Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանով (1973):

**ՄԱՐԻՆԵՏՏԻ** (Marinetti) Ֆիլիպո Տոմազո (1876—1944), իտալացի գրող: *Ֆուտուրիզմի* հիմնադիրն ու տեսաբանը եվրոպական գրականության և արվեստի մեջ: Գրել է իտալ. և ֆրանս.: Սկսել է որպես ազատ ոտանավորի բանաստեղծ: 1909-ին առաջին անգամ հրատարակել է «Ֆուտուրիզմի մանիֆեստը»: Մ. կոչ էր անում ազատագրվել անցյալի «մեռած մշակույթից», հումանիստական իդեալներից, ստեղծել «ապագայի դինամիկ գրականություն»՝ «futuro» (այստեղից էլ՝ ֆուտուրիզմ), որը գովերգեր մեքենայական տեխնիկան, պատերազմը՝ որպես «աշխարհի միակ հիգիենայի»: Մ. գովերգել է Աֆրիկայի բռնազավթումը («Մաֆարկա ֆուտուրիստը», վեպ, 1910), իտալա-թուրքական պատերազմը («Զանգ-տում-տում», բանաստեղծությունների ժողովածու, 1914): Որպես կամավոր մասնակցել է 1914—1918-ի առաջին համաշխարհային պատերազմին: 1919-ից Մուսոլինիի համախոհն էր: Ֆաշիստական տիրապետության տարիներին ընտրվել է ակադեմիկոս, եղել Իտալիայի գրողների միության նախագահը:



Ֆ. Մարինետտի

**ՄԱՐԻՆԵՐ** (նախկին անվանումը՝ չ ե ր ե մ ի ս ն ե ր), ժողովուրդ: Բնակվում են գլխավորապես Մարիական, ինչպես նաև Բաշկիրական, Ուդմուրտական, Թաթարական ԻՍՍՀ-ներում, ՌՍՖՍՀ Կիրովի, Գորկու, Պերմի և Սվերդլովսկի մարզերում: Բաժանվում են 3 տերիտորիալ խմբի՝ լեռնային (առավելապես՝ Վոլգայի աջ ափին), մարգագետնային (Վոլգայի ձախ ափին), և արլ. (Բաշկիրիայում և Սվերդլովսկի մարզում): Ընդհանուր թիվը՝ 622 հզ. (1979): Լեզուն մարիերենն է: XVI դ. Ռուս. պետության կազմի մեջ մտնելուց հետո սկսվեց Մ-ի քրիստոնեացումը, սակայն արլ. և մարգագետնային Մ-ի փոքր խմբեր քրիստոնեություն չընդունեցին՝ մինչև XX դ. պահպանելով նախկին հավատալիքները, հատկապես նախնիների պաշտամունքը: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից

հետո (1917-ին) Մ. ստացան ինքնավարություն և ձևավորվեցին որպես սոցիալիստական ազգ: Մ. աշխատում են գյուղատնտեսության և արդյունաբերության մեջ:

**«ՄԱՐԻՆԵՐ»** («Mariner»), Արեգակնային համակարգի մոլորակների (Վեներա, Մարս, Մերկուրի) և միջմոլորակային տարածության ուսումնասիրման համար նախատեսված ամերիկյան ավտոմատ միջմոլորակային կայանների և նրանց մշակման ու արձակման ծրագրերի անվանումը: «Մ.» ծրագրով աշխատանքները սկսվել են 1960-ին: «Մ.»-ի վրա տեղադրված են. ռադիոտեխնիկական սարքավորում, ծրագրա-ժամանակային հարմարանք, կողմնորոշման և կայունացման համակարգ, էներգետիկական տեղակայանք, ջերմակարգավորման համակարգ, ճշգրտող շարժիչային տեղակայանք, հեռուստատեսային խցիկներ և բազմաթիվ գիտական սարքեր:

**ՄԱՐԻՆՈ** (Marino) Ջամբատիստա (1569—1625), իտալացի բանաստեղծ: Նրա անունով է բարոկկո պոեզիայի ուղղություններից մեկը՝ մարինիզմը, որը տարածում է գտել XVII դ. իտալ. գրականության մեջ: Մ-ի աշխարհազգացողության մեջ հեդոնիզմը զուգակցվում է ամենայն գոյի անցավորության և տիեզերքի աններդաշնակության պատկերացման հետ: Նրա ամենանշանավոր գործը ութնյակներով գրված «Ադոնիս» (1623, 20 երգ) պոեմն է:

**ՄԱՐԻՈՆԵՏ** (< ֆրանս. Marion, Marionnete, սկզբնապես՝ կույս Մարիամի ոչ մեծ ֆիգուրների անվանումը տիկնիկներով ներկայացվող միջնադարյան միստերիաներում), թատերական *տիկնիկի* տարատեսակ: Մ-ի առանձնահատկությունն այն է, որ կրկնում է մարդու անատոմիան և շարժման մեջ դրվում մարմնամասերին ամրացված թելերով: Կան Մ-ի և այլ տեսակներ (տես *Տիկնիկային թատրոն*): Փոխաբերական իմաստով՝ մարդ, կառավարություն, պետություն, որ ուրիշի հլու գործիքն է:

**ՄԱՐԻՈՍ** Գայոս (Gaius Marius) (մ. թ. ա. մոտ 157—86), հռոմեացի զորավար և քաղաքական գործիչ: 119-ին ընտրվել է ժող. տրիբուն, 115-ին՝ պրետոր (ապա նշանակվել Իսպանիայի կառավարիչ), 107-ին՝ կոնսուլ: Աֆրիկայում պարտության է մատնել նումիդիացիներին (տես *Յուգուրթական պատերազմ մ. թ. ա. 111—105*): Կիմբրերի և տևտոնների հարձակման վտանգը հռոմեացիներին ստիպել է, հակառակ օրենքի, ևս չորս անգամ (մ. թ. ա. 104—101) Մ-ին ընտրել կոնսուլ: 102-ին ջախջախել է տևտոններին, 101-ին՝ կիմբրերին: 100-ի համար վեցերորդ անգամ ընտրվել է կոնսուլ: 107 թվականից իրականացրել է ռազմական ռեֆորմ, որով սկզբնավորվել է հռոմեական բանակը քաղաքացիական աշխարհազորից պրոֆեսիոնալ բանակի վերածվելու ընթացքը: 88-ին ժող. ժողովը Մ-ին է հանձնել Պոնտոսի թագավոր Միհրդատ VI Եվպատորի դեմ պատերազմի հրամանատարությունը, սակայն *Սուլլայի* կողմից Հռոմը գրավելուց հետո Մ. փախել է Աֆրիկա: Սուլլայի Արևելք մեկնելուց հետո Մ. Էտրուրիայում զորք է հավաքել և գրավել Հռոմը (87): 86-ի համար 7-րդ անգամ ընտրվել է կոնսուլ, սակայն շուտով մահացել է:

**ՄԱՐԻՈՏ** (Mariotte) Էդմ (1620—1684), ֆրանսիացի ֆիզիկոս, Փարիզի ԳԱ անդամ հիմնադրման օրից (1666): Եղել է Դիժոնի շրջակայքում գտնվող վանքի քահանա: Աշխատանքները վերաբերում են գազերի և հեղուկների մեխանիկային, ինչպես նաև օպտիկային: 1676-ին արտածել է գազի ծավալի և ճնշման հակադարձ համեմատականության օրենքը (տես *Բոյլ-Մարիոտի օրենք*): Առաջինն է օգտագործել այդ օրենքը բարոմետրի ցուցմունքով տեղանքի բարձրությունը որոշելու համար: 1668-ին հայտնաբերել է աչքի կույր բիծը: Նկարագրել է շատրվանների գործողությունը, հեղուկների հոսքը խողովակներով: Հետազոտել է նաև մարմինների հարվածի երևույթը, Արեգակի և Լուսնի շուրջը երևացող գունավոր օղակները:

**ՄԱՐԻՉ ՀՈՍՔԻ ԷՆԵՐԳԻԱՅԻ**, ջրահարներում կամ ջրնետ կառույցներից հետո՝ բիեֆի ներքին հատակի ամրակապումների սահմաններում կառուցվող հարմարանք՝ ջրի ավելցուկային կինետիկ էներգիայի մարման, հոսքի արագությունների փոքրացման և վերաբաշխման համար: Տարբերում են Մ. հ. է-ի մի քանի տեսակներ. ջրահար հորի կամ պատի տեսքով կառուցված մարիչների կոնստրուկցիաներում օգտագործվում է ջրածածկ *հիդրավլիկական թռիչքի* երևույթը, իսկ ցցանքային մարիչները ջրի հոսքը մասնատում են տարբեր ուղղություններով առանձին շիթերի: Ստորին բիեֆի հունի լայնությամբ կենտրոնացված հոսքի տարածման լավագույն պայմաններ ստեղծելու համար կիրառվում են մարիչ-տարածիչներ և ջրահար շեմքեր: Հոսքի մեծ արագությունների դեպքում մրրիկների առաջացման և ճնշումների բաբախման հետևանքով Մ. հ. է-ի մակերևույթի վրա կարող են առաջանալ տեղային կավիտացիոն քայքայումներ (տես *Կավիտացիա*), ուստի մարիչները կառուցվում են մեծ ամրության նյութերից, օրինակ, երկաթբետոնից:

**ՄԱՐԻՏԵՆ** (Maritain) Ժակ (1882—1973), ֆրանսիացի իդեալիստ փիլիսոփա, *նեոթոմիզմի* ներկայացուցիչ: Եղել է Ա. *Բերգսոնի* աշակերտը: 1906-ին ընդունել է կաթոլիկությունը: 1914-ից՝ մի շարք երկրների ինստ-ների և համալսարանների պրոֆեսոր: Միջնադարյան աշխարհըմբռնմանը վերադառնալը Մ. համարում էր հավատի (Մ. Լյութեր), մտքի (Ռ. Դեկարտ) և զգացմունքի (Ժ. Ժ. Ռուսո) ոլորտում իր կարծիքով նոր ժամանակի սուբյեկտիվիզմի առաջացրած բարոյական ու սոցիալական քաոսը հաղթահարելու ուղի: Մ. «քրիստոնեական դեմոկրատիայի» և «հումանիզմի» դիրքերից քննադատել է արդի կապիտալիզմը և բուրժ. դեմոկրատիան, ժխտել է հասարակության սոցիալական վերափոխումը: Հայտնի է նաև արվեստի և մանկավարժության վերաբերյալ աշխատություններով:

*Գրկ.* Кузнецов В. Н., Французская буржуазная философия 20 в., М., 1970, с. 173—201; Ярошевский Т. М., Личность и общество, пер. с польского, М., 1973.

**ՄԱՐԻՑԱ**, գետ Բալկանյան թերակղզում: Հոսանքի մեծ մասը անցնում է Բուլղարիայով, ստորին հոսանքում սահմանային գետ է Հունաստանի և Թուրքիայի միջև: Երկարությունը 525 *կմ* է, ավազանը՝54 հզ. *կմ*²: Սկիզբ է առնում Ռիլա լեռներից, հոսում Թրակիայի դաշտավայրով, թափվում Էգեյան ծով: Սնումը անձրևային է: Ամռանը ծանծաղում է: Օգտագործվում է ոռոգման համար: Մ-ի վրա կան ՀԷԿ-եր: Նավարկելի է գետաբերանից մինչև Էդիրնե քաղաքը: Մ-ի ափին են Պազարջիկ, Պլովդիվ, Դիմիտրովգրադ (Բուլղարիա), Էդիրնե (Թուրքիա) քաղաքները:

**ՄԱՐԻՈՒՊՈԼ**, Ուկրաինական ՍՍՀ Դոնեցկի մարզի *Ժդանով* քաղաքի նախկին (մինչև 1948-ը) անվանումը:

**ՄԱՐԻՔ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Կամախի գավառում: 1909-ին ուներ 78 տուն (586 շունչ) հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Գյուղում կար եկեղեցի և վարժարան: Բնակիչները զոհվել են 1915-ին, թուրք. կառավարության կազմակերպած ջարդերի հետևանքով:

**ՄԱՐԽԼԵՎՍԿԻ** (Marchlewski, ծածկանունը՝ Կ ա ր ս կ ի, Կ ու յ ա վ ս կ ի) Յուլիան (1866—1925), լեհական և միջազգային բանվորական շարժման գործիչ: Հեղափոխական շարժման մեջ ընդգրկվել է XIX դ. 80-ական թթ. որպես լեհ. առաջին հեղափոխական կուսակցության՝ «Պրոլետարիատ»-I-ի անդամ: 1891-ին բանտարկվել է, 1893-ին տարագրվել Շվեյցարիա: Լեհ. թագավորության ս-դ-ի հիմնադիրներից: 1896-ից աշխատակցել է լեհ. և գերմ. ս-դ. մամուլին: Օգնել է Վ. Ի. Լենինին «Իսկրա»-ի կազմակերպման գործում: 1905-ին վերադարձել է Վարշավա, մասնակցել 1905—07-ի հեղափոխությանը: ՌՍԴԲԿ V (Լոնդոնյան) համագումարի (1907) պատգամավոր, ընտրվել է Կենտկոմի անդամության թեկնածու: Եղել է II Ինտերնացիոնալի Ցյուրիխի և Շտուտգարտի կոնգրեսների պատգամավոր: 1909-ից հիմնականում աշխատել է գերմ. ս-դ. կուսակցությունում, հանդիսանալով նրա ձախ թևի ղեկավարներից, մասնակցել է *«Սպարտակ միություն»* կազմակերպմանը: 1916-ին բանտարկվել է: Ազատվել է 1918-ին, սովետական կառավարության պահանջով և ուղարկվել Ռուսաստան: 1918-ից՝ Համառուսաստանյան Կենտգործկոմի անդամ: Մասնակցել է Կոմինտերնի ստեղծմանը: 1919-ից՝ Գերմանիայի կոմկուսի ԿԿ անդամ, 1920-ից՝ ՌԿ(բ)Կ ԿԿ-ին կից Լեհական բյուրոյի անդամ, Լեհաստանի ժամանակավոր հեղափոխական կոմիտեի նախագահ: 1921—1922-ին կատարել է դիվանագիտական աշխատանք: 1922-ից՝ իր իսկ նախաձեռնությամբ ստեղծված *ՄՕՊՌ*-ի նախագահ: Գրել է միջազգային հեղափոխական շարժման, Լեհաստանի պատմության վերաբերյալ աշխատություններ և Վ. Ի. Լենինի մասին հուշեր:

**ՄԱՐԽՎԻՑԱ** (Marchwitza) Հանս (1890—1965), գերմանացի գրող (ԳԴՀ): Առաջին համաշխարհային պատերազմի (1914—18) զինվոր, Գերմանիայի կոմկուսի անդամ 1920-ից: 1933—46-ին՝ տարագիր (Շվեյցարիա, Ֆրանսիա, ԱՄՆ): Իսպանիայում 1936—39-ի ազգային-հեղափոխական պատերազմի մասնակից: «Էսսենի գրոհումը»

(1930) վեպի, «Կումիկները» (1934—59) եռերգության և այլ գործերի կենտրոնում Գերմանիայի բանվոր դասակարգի կյանքըն է ու պայքարը: ԳԴՀ ազգային մրցանակի դափնեկիր (1950, 1955, 1964):

**ՄԱՐԿ**, 1. Գերմանիայի դրամական միավորը, հավասար է 100 պֆենիգի: Սահմանվել է 1871-ին, 1923-ին փոխարինվել ռենտային մարկով, 1924-ին՝ ռայխսմարկով (շրջանառել է մինչև 1948-ը): 2. Դրամական միավորներ ԳԴՀ-ում (ԳԴՀ Պետբանկի Մ.) և ԳՖՀ-ում (ԳՖՀ գերմ. Մ.), հավասար են 100 պֆենիգի: Սահմանվել են 1948-ին: ՍՍՀՄ Պետբանկի 1981-ի փետր. 1-ի կուրսով ԳԴՀ 100 Մ.= 40 ռ. 50 կ., ԳՖՀ-ինը՝ 33 ռ. 25 կ.: 3. Ֆինլանդիայի դրամական միավորը, հավասար է 100 պեննիի: Սահմանվել է 1860-ին: 1963-ի հունվարին 100 անգամ խոշորացվել է: ՍՍՀՄ Պետբանկի 1981-ի փետր. 1-ի կուրսով 100 ֆին. Մ.= 17 ռ. 63 կ.:

**ՄԱՐԿԱ**, խոշոր սահմանային վարչական շրջան (մարկգրաֆի գլխավորությամբ) Կարոլինգների կայսրությունում և «Հռոմեական սրբազան կայսրությունում»: Մ-ները կազմվել են X—XII դդ. սլավոններից նվաճված հողերի վրա: Ֆեոդալական հարաբերությունների զարգացման հետ Մ-ները դարձել են խոշոր ֆեոդալական իշխանությունների կորիզը (օրինակ, Արևելյան Մ. Ավստրիա դքսության պատմական կորիզն է ևն):

**ՄԱՐԿԱԶԻՏ** (< ուշ լատ. marcasita, բառն ունի պարսկական ծագում), ճառագայթող հրաքար, միներալ, բնական ծծմբային երկաթի ($FeS_2$) բազմաձև տարբերակը: Բյուրեղագիտական համակարգը ռոմբային է: Առաջացնում է նիզակաձև, հաճախ բարդ կրկնաբյուրեղներ, կատարանման մակաճումներ, կլորավուն կոնկրեցիաներ կամ սև մրախառը զանգվածներ: Գույնը՝ լատունի դեղին, փայլը՝ մետաղական: Կարծրությունը՝ 6—6,5, խտությունը՝ 4900 *կգ/մ*$^3$: Առաջանում է հիդրոթերմալ հանքավայրերում պիրիտի, պիրոտինի և այլ սուլֆիդների հետ միասին: Օգտագործվում է ծծմբաթթու ստանալու համար:

**ՄԱՐԿԵ** (Marche), վարչական մարզ Իտալիայում, Ապենինյան թերակղզու հյուսիսարևելքում: Ընդգրկում է Անկոնա, Պեզարո և Ուրբինո, Ասկոլի Պիչենո, Մաչերատա գավառները: Տարածությունը 9,7 հզ. *կմ*$^2$ է, բն. 1358,4 հզ. (1980): Գլխավոր քաղաքն ու նավահանգիստը՝ Անկոնա: Ռելիեֆը լեռնա-բլրային է: Ծովամերձ նեղ շերտը կտրտված է Տրոնտոյի, Մետաուրոյի և Պոտենցայի գետահովիտներով: Ագրարային մարզ է: Զբաղվում են հացահատիկի, շաքարի ճակնդեղի մշակությամբ, խաղողագործությամբ, անասնապահությամբ, շերամապահությամբ, ձկնորսությամբ: Կան նավթավերամշակման, նավաշինական, քիմ., թղթի, ցեմենտի, ծխախոտի, սննդի արդյունաբերության ձեռնարկություններ:

**ՄԱՐԿԵԹԻՆԳ** (անգլ. marketing, < market — շուկա), կապիտալիստական ձեռնարկության կառավարման ու կազմակերպման համակարգ, երբ տնտ. հարցերի (նոր արտադրատեսակների մշակում, թողարկում, իրացում, ծառայություններ) լուծման համար օգտագործվում են շուկայական պրոցեսների համալիր հաշվառման տվյալները: Նպատակը առավելագույն շահույթի ստացումն է: Առաջացել է XX դ. սկզբին, ԱՄՆ-ում, առավել տարածում ստացել 50—60-ական թթ.: Հիմնական ֆունկցիաներն են՝ պահանջարկի, նաև գնագոյացման, ռեկլամի, իրացումը խթանելու, ապրանքատեսակների պլանավորման հարցերի մշակումը ևն:

**ՄԱՐԿԵՂ** (< հուն. μακέλη = μάκελλα — բրիչ), գծանշիչ, շարքացանների, հազվադեպ՝ կուլտիվատորների վրա տեղակայվող հարմարանք, որը դաշտի մակերևույթին մեքենայի հետագծին զուգահեռ հետք է թողնում (գծանշում է): Մ-ի երկարությունը հաշվարկված է այնպես, որ ամբողջ դաշտում միջշարային տարածությունները նույնը ստացվեն: Տրակտորի վրա տեղակայվում է տարբեր երկարության երկու Մ.՝ աջ և ձախ:

**ՄԱՐԿԵՍ** Գարսիա (Marguez Garcia) Գաբրիել (ծն. 1928, Արակատակա, Կոլումբիա), կոլումբացի գրող: Գրել է սցենարներ: Եղել է «Էլ էսպեկտադոր» («El Espectador») լիբերալ թերթի, 1959—60-ին՝ Կուբայի «Պրենսա լատինա» գործակալության թղթակիցը Բոգոտայում, Կարակասում, Հռոմում, Նյու Յորքում: «Թափված տերևներ» (1955) վեպում, «Գնդապետին ոչ ոք չի գրում» (1958), «Չարաբաստիկ ժամը»(1962) վիպակներում ուժեղ են քննադատական մոտիվները: «Մեծ մայրիկի հուղարկավորությունը» (1962) ժողովածուի պատմվածքներում Մ. առաջին անգամ դիմել է ֆանտաստիկային, որը հետագայում դարձել է նրա «Հարյուր տարվա մենություն» (1967, հայ. հրտ. 1979) վեպ-էպոպեայի գեղարվեստական հիմնական տարրերից մեկը: Վեպը, որի իրական հիմքը Կոլումբիայի պատմությունն է, տալիս է բուրժ. քաղաքակրթության երգիծական պատկերը: «Ֆանտաստիկական ռեալիզմի» գործ է նաև «Նահապետի աշունը» (1975) վեպը, որի առարկան Լատինական Ամերիկան է՝ իր հոգսերով ու հույսերով: Մ-ի վեպերը թարգմանվել են աշխարհի շատ լեզուներով: *Հ. Գրիգորյան*

**ՄԱՐԿԻԱՆՈՍ** (Μαρκιανός) (392—457), Բյուզանդիայի կայսր 450-ից: Իր ազդեցությանն է ենթարկել Վրաստանը, միջամտել նրա եկեղեցական ու քաղ. գործերին: Հրաժարվել է օգնել Սասանյանների դեմ 450-ին ապստամբած հայերին: 451-ին Մ-ի նախագահությամբ Քաղկեդոնում կայացել է տիեզերական չորրորդ ժողովը, որը չեղյալ է հայտարարել Եփեսոսի 449-ի ժողովի որոշումները, դատապարտել միաբնակությունը (տես *Միաբնակներ*):

**ՄԱՐԿԻԶՅԱՆ ԿՂԶԻՆԵՐ** (Îles Marquises), արշիպելագ Խաղաղ օվկիանոսի կենտրոնական մասում, Պոլինեզիայում: Ֆրանսիական տիրույթ է («անդրծովյան տերիտորիա»): Տարածությունը 1274 *կմ*$^2$ է, բն.՝ 4,8 հզ. (1980), պոլինեզացիներ: Վարչական կենտրոնը՝ Տաիոխաե: Առավել խոշոր կղզիներ են Նուկուհիվան և Հիվա-Օան: Բարձրությունը մինչև 1259 *մ* է: Ունեն հրաբխային ծագում: Կազմված են բազալտներից, տուֆերից: Կլիման արևադարձային է, պասսատային: Տարածված են արևադարձային անտառներն ու թփուտային սավաննաները: Կան կոկոսյան արմավենու, բամբակենու, բանանի, սուրճի պլանտացիաներ: Զբաղվում են ձկնորսությամբ, մարգարիտի արդյունահանմամբ: Զարգացած է տուրիզմը: Հայտնագործել է իսպանացի ծովագնաց Ա. Մենդանյա դե Նեյրան, 1595-ին:

**ՄԱՐԿԻՇ** Պերեց Դավիդովիչ (1895—1952), հրեա սովետական գրող: ՍՄԿԿ անդամ 1942-ից: Զբաղվել է ինքնակրթությամբ, սովորել Շանյավսկու ժող. համալսարանում: «Կույտ» (1922) պոեմը, որը Գորոդիշչեում պետլյուրականների կազմակերպած հրեական ջարդերի մասին է, լի է տագնապով ու ցավով: 1921—26-ին եղել է արտասահմանում: Գրել է «Եղբայրներ» (1929), «Չվհատվել» (1931), «Տատասկ» (1935), «Արշալույսը Դնեպրի վրա» (1937) էպիկական պոեմները: «Պատերազմ» (1941—1948) պոեմը նվիրված է Հայրենական մեծ պատերազմին: Հեղինակ է «Դարեր շարունակ» (հ. 1—2, 1929—41), «Սերունդների երթը» (1948, հրտ. 1966) և այլ վեպերի: Գրել է նաև պիեսներ:

**ՄԱՐԿԻՈՆԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, գնոստիկյան կրոնա-փիլիսոփայական ուսմունք, հերետիկոսություն քրիստոնեությունում: Առաջացել է II դ., Մարկիոնի (85—180) վարդապետությունից: Տարածում է գտել հատկապես Հռոմում, Եգիպտոսում, Պաղեստինում, Ասորիքում, Հայաստանում: Մ-յան հիմնական սկզբունքները շարադրված են եղել Մարկիոնի չպահպանված «Հակաթեզեր» գրվածքում: Մ-յան հիմքում արլ. կրոններին հատուկ երկվությունն էր՝ բարու (հոգի) և չարի (նյութ) հակադրությունը: Մ. ընդունում էր ևս մեկ նախասկիզբ՝ արդարը (օրենքի աստված), որն էլ իբր ստեղծել է մարդկանց: Օրենքի աստվածը թեև բացարձակ արդարության կրողն է, բայց նրան խորթ են սերն ու գթությունը, և այդ պատճառով մարդիկ հակվել են չարին, ընկել նրա տիրապետության տակ: Ըստ Մ-յան, մարդկությանը չարից փրկելու է բարու աստվածը, որն այդ նպատակով արդեն երկիր է ուղարկել Քրիստոսին (Մեսիա), նրա միջոցով մարդկանց պարգևել փրկության հնարավորություն՝ սովորեցրել սիրել ու գթալ: Մ. ժխտում էր Հին կտակարանը, Նոր կտակարանից սրբագրումներով ընդունելի համարում միայն Ղուկասի Ավետարանը և Պողոս առաքյալի առաջին 10 թղթերը: Հակառակ եկեղեցու՝ Մ. քարոզում էր ընդհանուր քահանայություն (այդ թվում նաև կանանց համար), կողմնակից էր ծայրահեղ ճգնակեցության և կուսակրոնության: Քրիստոնեության ձևավորվող դոգմաներին Մ. հակադրում էր համեմատաբար ազատ կրոն, որը նրա դեմ առաջ բերեց եկեղեցու կատաղի հալածանքը: Մ-յան դեմ գրվել են բազմաթիվ հակաճառություններ (Հուստինոս, Թեոփիլոս Անտիոքցի, Իրենեոս, Տերտուլիանոս, Եզնիկ Կողբացի և ուրիշներ): Կոստանդինոս Մեծի օրոք (306—337) Մ. պաշտոնապես արգելվեց Հռոմեական կայսրությունում: Արևելքում գոյատևեց մինչև V դ. կեսը՝ աստիճանաբար ձուլվելով *մանիքեության*:

*Գրկ.* Եզնիկ Կողբացի, Եղծ աղան-

դոց, Ե., 1970: Տեր-Մինասյան Ե. Գ., Միջնադարյան աղանդների ծագման և զարգացման պատմությունից, Ե., 1968: Свенцицкая И. С., Тайные писания первых христиан, М., 1980.

**ՄԱՐԿՇԵՅԴԵՐԱԿԱՆ ԳՈՐԾ**, մարկշեյդերիա (գերմ. Markscheider — մարկշեյդեր, < Mark — սահման և scheiden — ճանաչել, որոշել), հանքային գիտության բաժին, որն օգտագործում է երկրի մակերևույթի վրա և հանքափորվածքներում կատարված տարածական-երկրաչափական չափումների տվյալները տեխնիկական խնդիրների լուծման համար՝ օգտակար հանածոների հանքավայրերի հետախուզման և շահագործման ժամանակ, ինչպես նաև լեռնաշինարարական աշխատանքներ կատարելիս: Աշխատանքները կատարվում են մարկշեյդերական գործիքներով: Մ. գ. լեռնահանքային արդյունաբերության բոլոր էտապների անբաժանելի մասն է: Մարկշեյդերական աշխատանքներն իրականացնում է մարկշեյդերական ծառայությունը, որը մտնում է հանքային ձեռնարկության կամ կազմակերպության մեջ: Հանքավայրերի մանրամասն հետախուզության ժամանակ այդ ծառայության խնդիրն է հենացանցի կառուցումը, երկրի մակերևույթի, բոլոր գործող հանքափորվածքների, բնական և արհեստական մերկացումների հանույթը: Հանքային ձեռնարկությունների նախագծման դեպքում մարկշեյդերները մասնակցում են նախագծա-որոնողական աշխատանքներին, հանքային ձեռնարկությունների սահմանների և հանքավայրերի մշակման համակարգի նախագծմանը, շենքերի և կառույցների տեղաբաշխմանը ևն: Հանքային ձեռնարկությունների շինարարություն կատարելիս մարկշեյդերական ծառայությունը իրականացնում է հենակետերի ցանցի կառուցումը և շինարարության նախագծի երկրաչափական տարրերի փոխադրումը տեղանք, տալիս է հանքափորվածքների անցման ուղղությունները ևն: Հանքավայրը շահագործելու դեպքում մարկշեյդերական ծառայությունը արձանագրում է հանքային ձեռնարկության արտադրական պրոցեսի դինամիկան և կազմում հանքային գրաֆիկական փաստագրման գծագրերը, հանքափորվածքների առաջանցմանը զուգընթաց ճշգրտում է հանքավայրերի տեղադրման պայմանները, օգտակար հանածոյի որակը, մարմինների ձևը, ներփակող ապարների հատկությունները ևն: Հանքային ձեռնարկության լուծարքի կամ գործունեության դադարի դեպքում մարկշեյդերական ծառայությունը որոշում է օգտակար հանածոյի հանույթի լրիվությունը և լրացնում հանքային գրաֆիկական փաստագրման գծագրերը՝ տվյալ ժամանակին համապատասխան: *Է. Սարգսյան*

**ՄԱՐԿՈ ՊՈԼՈ** (Marco Polo) (մոտ 1254—1324), իտալացի ճանապարհորդ և գրող: Ուղեկցելով վենետիկցի վաճառականներ հորն ու հորեղբորը՝ Մ. Պ. 1271—75-ին ծովով հասել է Փոքր Ասիայի ափերին, այնտեղից ցամաքով (անցնելով Հայկական բարձրավանդակը, Միջագետքը, Իրանական բարձրավանդակը, Պամիրն ու Կաշգարյան)՝ Հյուսիս. Չինաստան: Չինաստանում մինչև 1292-ը ծառայել է Խուբիլայ խանի մոտ: 1295-ին Հարավային Չինաստանից Իրանով վերադարձել է Վենետիկ: Մ. Պ-ի՝ իր ուղևորությունների մասին գեղեցիկ պատմությունները, որ գրի է առել բանտարկյալ Ռուստիչանոն, կազմել են «Մարկո Պոլոյի գիրքը» (1298) երկը, որը Հայաստանի, Վրաստանի, Իրանի, Չինաստանի, Մոնղոլիայի, Հնդկաստանի, Ինդոնեզիայի ևնի աշխարհագրության, ազգագրության, պատմության արժեքավոր աղբյուր է: Այն պարունակում է նաև ժող. ավանդություններ, առասպելներ, հեքիաթներ. գիրքը մեծ ազդեցություն է ունեցել XIV—XVI դդ. ծովագնացների, քարտեզագիրների, գրողների վրա:

*Գրկ.* Харт Г., Венецианец Марко Поло, пер. с англ., М., 1956.

**ՄԱՐԿՈՄԱՆՆԵՐ** [լատ. marcoman(n)i], հին գերմանական ցեղ: Մ. թ. ա. I հազարամյակի 2-րդ կեսին բնակվել են այժմյան Սաքսոնիայի և Թյուրինգիայի տարածքում: Մ. թ. ա. II դ. վերջին —I դ. սկզբին շարժվել են դեպի Մայնի միջին և վերին շրջանները: Մ. թ. ա. 8-ին, Հյուսիսային Գերմանիան հռոմեացիների գրավելուց հետո, Մ. վերաբնակվել են այժմյան Չեխիայի տարածքում և մտել Մարոբոդի գլխավորած ցեղային միավորման մեջ: Մ. թ. 17-ին Մ. նահանջեցին դեպի Դանուբ: I—II դդ. Մ. և կվադները Դանուբի սահմաններում մշտապես սպառնում էին հռոմեացիներին, որի հետևանքով 166—180-ին ծագեց Մարկոմանյան պատերազմը: IV դարից Մ. մասնակցեցին Ժողովուրդների մեծ գաղթին: V դ. վերջին բնակություն հաստատեցին Բավարիայում:

**ՄԱՐԿՈՆԻ** (Marconi) Գուլիելմո (1874—1937), իտալացի ռադիոտեխնիկ և ձեռնարկատեր: Զբաղվել է ֆիզիկայով: 1896-ի հունիսին ներկայացրել է «էլեկտրական իմպուլսների ու ազդանշանների հաղորդման և դրա ապարատների կատարելագործման» հայտ, իսկ 1897-ին ստացել անգլ. արտոնագիր: 1897-ին կազմակերպել է խոշոր բաժնետիրական ընկերություն («Մարկոնի Kº»), որտեղ աշխատելու է հրավիրել շատ նշանավոր գիտնականների և ինժեներների: 1901-ին Մ. իրականացրել է ռադիոկապ՝ Ատլանտյան օվկիանոսի վրայով: Արժանացել է Նոբելյան մրցանակի (Կ. Ֆ. Բրաունի հետ) (1909):

**ՄԱՐԿՈՍ** (Marcos) Ֆերդինանդ Էդրալին (ծն. 1917), Ֆիլիպինների պետական և քաղաքական գործիչ: Մասնագիտությամբ՝ փաստաբան: Երկրորդ համաշխարհային պատերազմի (1939—45) ժամանակ մասնակցել է ճապոնական զավթիչների դեմ պայքարին: 1965-ին ազգայնականների կուսակցությունից ընտրվել է պրեզիդենտ, 1969-ին՝ վերընտրվել: Մ-ի կառավարությունն իրականացրել է արտաքին քաղաքականության մեջ ԱՄՆ-ից կախվածությունը թուլացնելու միջոցառումներ, բուրժուա-դեմոկրատական բարեփոխումներ: 1972-ից, օպոզիցիայի դեմ պայքարելու նպատակով, ռազմ. դրություն մտցնելուց հետո, իր ձեռքն է վերցրել օրենսդիր և գործադիր (1973-ից՝ նաև պրեմիեր մինիստր) իշխանությունը:

**ՄԱՐԿՈՍ ԱՎՐԵԼԻՈՍ** (Marcus Aurelius) (121—180), հռոմեական կայսր 161-ից: *Անտոնինուսների* դինաստիայից: Հաջորդել է *Անտոնինուս Պիուսին*: 162—166-ի պատերազմում հաղթել է պարթևներին, որոնց հետ կնքած պայմանագրով (166) Հռոմեական կայսրությանն է անցել Միջագետքի արմ. մասը, Հայաստանը ճանաչվել է անկախ, որտեղ, սակայն, թագավորելու էին Հռոմի դրածոները: 166—180-ի պատերազմում պարտության է մատնել գերմ. ցեղերին ու սարմատներին: 172-ին ճնշել է Եգիպտոսում բռնկած «բուկոլոսների» (հովիվների) ապստամբությունը:

Լինելով ստոիկյան դպրոցի հետևորդ՝ Մ. Ա. իր «Գիրք ոսկեղենիկ» փիլ. աշխատության մեջ արտահայտել է ինքնակատարելագործման ձգտում, հոռետեսորեն է վերաբերվել քաղ. կարգի կատարելագործման հնարավորությանը:

**ՄԱՐԿՈՍՅԱՆ** Հակոբ Արտաշեսի [7(20).12.1904, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)—1972, Մոսկվա], հայ սովետական ֆիզիոլոգ և մանկավարժ: ՌՍՖՍՀ ՄԳԱ իսկական անդամ (1965), ՍՍՀՄ ՄԳԱ իսկական անդամ (1968): ՍՄԿԿ անդամ 1938-ից: Ավարտել է Մոսկվայի Վ. Ի. Լենինի անվ. մանկավարժական ինստ-ը



Հ. Ա. Մարկոսյան

(1934): Մանկավարժական գործունեությունն սկսել է Լենինականում (1923—1930), գիտամանկավարժականը՝ Մոսկվայի բուհերում (1937—1942), 1942—48-ին եղել է Բուժհրատի խմբագիր, ապա՝ դիրեկտոր, 1949-ից՝ ՌՍՖՍՀ, ապա՝ ՍՍՀՄ ՄԳԱ ֆիզիկական դաստիարակության և դպրոցական հիգիենայի, 1968—72-ին՝ տարիքային ֆիզիոլոգիայի և ֆիզիկական դաստիարակության ինստ-ի դիրեկտոր:

Մ. մշակել է կենտրոնական նյարդային համակարգի ֆիզիոլոգիայի հարցերը, մասնավորապես ֆիզիոլոգիական ակտիվ նյութերի ազդեցությունը գլխուղեղի կեղևի դրդման և արյան պայմանառեֆլեկտոր փոփոխությունների (մակարդման) վրա: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի, «Պատվո նշան» շքանշաններով:

*Երկ.* Исследования И. П. Павлова в области кровообращения и пищеварения, М., 1953; Нормальная физиология. Учебник, 4 изд., испр., М., 1955; Нервная регуляция свертывания крови, М., 1960; Физиология свертывания крови, М., 1966; Вопросы возрастной физиологии, М., 1974.

**ՄԱՐԿՈՎ** Անդրեյ Անդրեևիչ (1856—1922), ռուս մաթեմատիկոս: Պետերբուրգի ԳԱ ակադեմիկոս (1890): 1886-ից՝ Պետերբուրգի համալսարանի պրոֆեսոր: Ավարտել է Պետերբուրգի համալսարանը (1878):

Մ-ի աշխատանքները վերաբերում են թվերի տեսությանը, հավանականությունների տեսությանը, մաթ. անալիզին: Մ-ի «Դրական որոշիչի բինար քառակուսային ձևերի մասին» աշխատանքը (1880) թվերի տեսության այդ բնագավառի հետագա հետազոտությունների հիմք ծառայեց: Մաթ. անալիզի բնագավառում Մ-ի աշխատանքները վերաբերում են անընդհատ կոտորակների տեսությանը, ինտեգրալների սահմանային արժեքների ուսումնասիրությանը, շարքերի զուգամիտության լավացման հարցերին և լավագույն մոտավորությունների տեսությանը: Հավանականությունների տեսությունում Մ. առաջին անգամ տվել է հիմնական սահմանային թեորեմի լրիվ և խիստ ապացույցը բավական ընդհանուր պայմանների դեպքում: Հետագա աշխատանքներում Մ. ուսումնասիրել է կախյալ փորձերի հաջորդականություններ և դրանց հետ կապված պատահական մեծությունների գումարներ (այսպես կոչված, Մ-յան շղթաներ): Նրա այս աշխատանքներով սկիզբ դրվեց հավանականական *մարկովյան պրոցեսների* արդի տեսությանը: Մ. զբաղվել է հավանականությունների տեսության զանազան կիրառություններով և, մասնավորապես, տվել նվազագույն քառակուսիների մեթոդի հավանականական հիմնավորումը:

**ՄԱՐԿՈՎ** Գեորգի Մոկեևիչ [ծն. 6(19).4. 1911, գ. Նովոկուսկովո, այժմ՝ Տոմսկի մարզի Ասինոյի շրջանում], ռուս սովետական գրող, հասարակական գործիչ: Սոցիալիստական աշխատանքի հերոս (1974): ՍՄԿԿ անդամ 1946-ից: Սովորել է Տոմսկի համալսարանում (1930—32): Հայտնի է Մ-ի «Ստրոգովներ» (գ. 1—2, 1939—46, ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1952) պատմա-հեղափոխական վեպը: «Երկրի աղը» (գ. 1—2, 1954—60), «Հայր և որդի» (մ. 1—2, 1963—64, լենինյան կոմերիտմիության մրցանակ, 1980) վեպերը Սիբիրի սոցիալիստական վերակառուցման



Գ. Մ. Մարկով

մասին են: «Սիբիր» (գ. 1—2, 1969—73, հայ. հրտ. 1978) վեպը պատկերում է մինչհոկտեմբերյան ժամանակների ռուսաստանյան իրականությունը, հեղափոխական լենինյանների գործունեությունը: Մ. հեղինակ է նաև վիպակների, պատմվածքների ու ակնարկների: Գրականության հարցերին վերաբերող նրա հոդվածներն ու ելույթներն ամփոփված են «Կյանքը: Գրականությունը: Գրողը» (1971) գրքում: 1980-ին լույս տեսավ Մ-ի հրապարակախոսական հոդվածների ժողովածուն («Պատանեկությանը»): Մ. 1956-ից ՍՍՀՄ ԳՄ վարչության քարտուղար է, 1971-ից՝ 1-ին քարտուղարը: Նրա գրքերը թարգմանված են ՍՍՀՄ և այլ ժողովուրդների լեզուներով: 1966—71-ին եղել է ՍՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամ, 1971-ից՝ ՍՄԿԿ Կենտկոմի անդամ: ՍՍՀՄ VII—X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Լենինյան մրցանակ (1976): Պարգևատրվել է Լենինի 2, Հոկտեմբերյան հեղափոխության և այլ շքանշաններով:

**ՄԱՐԿՈՎԻՉ** (Маркoвић) Սվետոզար (1846—1875), սերբ հեղափոխական դեմոկրատ: Մասնակցել է ռուս. հեղափոխական շարժմանը, 1-ին Ինտերնացիոնալի ռուս. սեկցիայի գործունեությանը: Հրատարակել է Բալկաններում առաջին սոցիալիստական թերթը («Ռադենիկ», 1871—72): Մ. սերբական հասարակական մտքի հեղափոխական ուղղության սկզբնավորողն է: Նրա աշխարհայացքի վրա մեծ ազդեցություն են ունեցել ռուս հեղափոխական դեմոկրատների (հատկապես Ն. Գ. Չեռնիշևսկու) գաղափարները: Մ-ի հայացքների հիմքը մատերիալիզմն է, որին, սակայն, բնորոշ են մարդաբանական մատերիալիզմի որոշ սահմանափակություններ: Հասարակական երևույթների ըմբռնման հարցում իդեալիստ էր: Ենթադրում էր, որ անցումը սոցիալիզմին հնարավոր է կիսանահապետական համայնք-զադրուգայի (գերդաստանի) միջոցով: Պատմության զարգացման շարժիչ է համարել ժողովրդին, դեմոկրատական հանրապետության հաստատումը կապել է գյուղացիական հեղափոխության հետ: Մ. սկզբնավորել է Սերբիայի մատերիալիստական գեղագիտությունը և քննադատական ռեալիզմը:

*Երկ.* Избр. соч., М., 1956.

**ՄԱՐԿՈՎՅԱՆ ՊՐՈՑԵՍՆԵՐ**, *պատահական պրոցեսների* առավել կարևոր դասերից մեկը. ուսումնասիրվում է մի համակարգ, որը ժամանակի ընթացքում ենթարկվում է պատահական փոփոխությունների, ընդ որում՝ ժամանակի յուրաքանչյուր t պահին այն գտնվում է հնարավոր վիճակների $\Omega$ բազմությանը պատկանող որևէ $F_t$ վիճակում: Պրոցեսն անվանում են մ ա ր կ ո վ յ ա ն, եթե ժամանակի $F_{t_0}$-ից մեծ պահերին համակարգի՝ այս կամ այն վիճակում [կամ վիճակների մի $\Gamma(\Gamma\subset\Omega)$ բազմության վրա] գտնվելու հավանականությունը լիովին որոշվում է $F_{t_0}$ վիճակով, և կախված չէ այն բանից, թե ինչպիսի վիճակներում է գտնվել համակարգը $t_0$-ին նախորդող պահերին: Մ. պ. բնորոշվում է P(s, x, t, Γ) ա ն ց մ ա ն ֆ ու ն կ ց ի ա յ ո վ (հ ա վ ա ն ա կ ա ն ու թ յ ու ն ն ե ր ո վ), որը ցույց է տալիս, որ համակարգը ժամանակի s պահին գտնվելով x վիճակում, ժամանակի t պահին P հավանականությամբ կգտնվի վիճակների Γ բազմության վրա:

Եթե ժամանակի պահերի բազմությունը ամբողջ թվերն են, ապա Մ. պ. անվանում են Մ ա ր կ ո վ ի շ ղ թ ա. և եթե $\Omega$-ն վերջավոր է կամ հաշվելի, ապա Մարկովի շղթան բնութագրվում է $P_n=(P_{ij}^{(n)})^N_{ij=1}$ մատրիցով (N-ը համակարգի հնարավոր վիճակների քանակն է). $(P_{ij}^{(n)})$-ը հավանականությունն է այն բանի, որ եթե ժամանակի n-րդ պահին համակարգը գտնըվել է i-րդ վիճակում, ապա հաջորդ՝ (n+ +1)-րդ պահին կգտնվի j-րդ վիճակում:

Մ. պ-ի օրինակ է բրոունյան շարժումը՝ փոքր մասնիկի պատահական դեգերումները հեղուկում՝ մոլեկուլների հարվածների հետևանքով, եթե մասնիկի իներցիան հաշվի չի առնվում:

*Ն. Ենգիբարյան*

**ՄԱՐԿՈՎՆԻԿՈՎ** Վլադիմիր Վասիլևիչ (1837—1904), ռուս քիմիկոս: Ա. Մ. *Բուտլերովի* աշակերտը: 1860-ին ավարտել է Կազանի համալսարանը և 1862-ից դասախոսել նույն տեղում (1869-ից՝ պրոֆեսոր): 1873-ից Մոսկվայի համալսարանի պրոֆեսոր: Մ-ի գիտական աշխատանքները վերաբերում են քիմ. կառուցվածքի տեսության զարգացման և նավթի ու ալիցիկլիկ ածխաջրածինների հետազոտման հարցերին: Մ. առաջինն է տվել (1865) իզոմերիայի երևույթը ճարպաթթուների շարքում, սահմանել մի շարք օրինաչափություններ տեղակալման, միացման և քայքայման ռեակցիաների վերաբերյալ (տես *Մարկովնիկովի կանոն*): Հետազոտել է Կովկասի նավթը (1880-ին), հայտնաբերել և ուսումնասիրել ածխաջրածինների նոր դաս, որն անվանել է նավթեններ: Նավթից անջատել է արոմատիկ ածխաջրածիններ:

*Երկ.* Избр. труды, М., 1955 (կա աշխատությունների ցանկ):

*Գրկ.* П л а т э А. Ф., Б ы к о в Г. В., Э в е н т о в а М. С., Владимир Васильевич Марковников, М., 1962.

**ՄԱՐԿՈՎՆԻԿՈՎԻ ԿԱՆՈՆ**, ասիմետրիկ օլեֆիններին հալոգենաջրածինների կամ ջրի միացման կարգը որոշող օրինաչափություն. ջրածնի ատոմը միանում է ածխածնի առավել հիդրոգենացված ատոմին, իսկ հալոգենի ատոմը կամ հիդրօքսիլ խումբը՝ քիչ հիդրոգենացված ատոմին (Վ. *Մարկովնիկով*, 1869): Ըստ ժամանակակից պատկերացման միացման այդպիսի կողմնորոշումը պայմանավորված է միացնող նյութերի մոլեկուլներում էլեկտրոնային խտության բաշխմամբ և առաջացող միջանկյալ կարբոնիում իոնի կայունությամբ:

Զուգորդված կրկնակի կապեր և էլեկտրաբացասական խումբ պարունակող միացություններին էլեկտրա- և նուկլեաֆիլ նյութերի միացումը տեղի է ունենում հակառակ Մ. կ-ի: Այդ բացատրվում է էլեկտրոնային խտության տեղաշարժով դեպի էլեկտրաբացասական ատոմը:

Մ. կ. խախտվում է նաև գերօքսիդների առկայությամբ օլեֆիններին HBr միանալիս (Կարաշի էֆեկտ):

Միացման դիրքորոշումը կանխատեսելու համար անհրաժեշտ է բազմակողմանիորեն հաշվի առնել մոլեկուլների էլեկտրոնային և տարածական գործոնները:

**ՄԱՐԿՎԱՐՏ** (Markwart) Յոզեֆ (9.12. 1864, Ռայխենբախ—3.2.1930, Բեռլին), գերմանացի արևելագետ, հայագետ, բանասեր, լեզվաբան, աշխարհագրագետ: Սովորել է Թյուբինգենի համալսարանում: 1894—1900-ին եղել է նույն համալսարանի պրիվատ դոցենտ, 1900—1911-ին՝ Լեյդենի (Հոլանդիա) Նիդերլանդական ազգագրական թանգարանի ավան-

Յո. Մարկվարտ

դպրոցի, դասախոս, 1912-ից՝ Բեռլինի համալսարանի դասախոս: Այստեղ 1920-ին հիմնել է իրանական և հայկ. բանասիրության ամբիոն և վարել մինչև կյանքի վերջը: Դոկտորի աստիճան է ստացել 1893-ին՝ հույն պատմիչ Կտեսիասի (մ. թ. ա. V—IV դդ.) կորած երկի մասին գրած աշխատության համար:

Համընդհանուր ճանաչման է արժանացել իրանագիտության, կովկասագիտության, հայագիտության բնագավառներում կատարած հետազոտությունների համար: Մ. օգտագործել է բազմաթիվ ու բազմալեզու աղբյուրներ, ուսումնասիրություններում քննել է հայերի, արաբների, հույների, պարսիկների, թուրքերի, մոնղոլների, ռուսների, հրեաների, աղվանների, վրացիների, ղփչաղների, աֆրիկյան երկրների (Նիգերիա, Սուդան, Մալի, Գվինեա, Գանա, Եթովպիա, Եգիպտոս) և այլ ժողովուրդների պատմության տարբեր խնդիրներ: Նրա «Երանշահրն ըստ կեղծ Մովսես Խորենացու Աշխարհացույցի» (գերմ., 1901) երկը (որը շարադրված է Անանիա Շիրակացուն վերագրվող «Աշխարհացոյց»-ի և այլ աղբյուրների հիման վրա) ճանաչված է Իրանի ու Կենտրոնական Ասիայի պատմական աշխարհագրության բնագավառում կատարված ներդրումներից ամենանշանավորը: Հայագիտության համար կարևոր են հայկ. աղբյուրներում կատարված բնագրական ճշգրտումները:

Մ-ի զուտ հայագիտական ուսումնասիրությունների շարքն սկսվում է Մեսրոպ Մաշտոցին նվիրված հետազոտությամբ (գերմ., 1917), որը 1902-ին կարդացել է Արևելագետների միջազգային կոնգրեսում (Համբուրգ), իսկ 1905-ին՝ արժանացել Լազարյան ճեմարանի մրցանակին: Մյուս հետազոտությունների նյութերն են՝ Հարավային Հայաստանն ու Տիգրիսի ակունքներն ըստ հույն և արաբ աշխարհագիրների, Արտաքսատա—Արմաստիկա երթուղին, հայերի բնօրրանը, հայոց Արշակունիները, Բագրատունիները, ինչպես և Մովսես Խորենացուն, Փավստոս Բուզանդին, Մովսես Կաղանկատվացուն և այլոց վերաբերող հարցեր: Մ. ունի նաև բազմաթիվ անտիպ երկեր (պահվում են Հռոմի «Pontificio instituto Biblico»-ի գրադարանում), որոնք վերաբերում են հայերի ծագմանը («Հայերը և փռյուգիացիները»), հայկ. հին գաղթավայրերին («Հայերը որպես գաղթաբնակներ հին դարերում և վաղ միջնադարում»), առանձին թագավորություններին («Հայոց մատնակի թագավորությունների ժամանակագրությունը»), Արշակունյաց թագավորության հիմնադրմանը («Սեբեոսի նախնական պատմությունը»), Անանուն զրուցագրին (կեղծ Շապուհ Բագրատունին), Կորյունին («Վարք Մաշտոցի»), Փավստոս Բուզանդին, Մանազկերտի 726-ի ժողովին, մազքութներին և այլ հարցերի լուսաբանմանը:

Մ. հայ ժողովրդի մեծ բարեկամն էր: Պարբերաբար հանդես է եկել հայոց դատի պաշտպանությամբ, պայքարել հայոց պատմության չարամիտ աղավաղումների դեմ: Նշավակել է աբդուլհամիդյան հայաջինջ քաղաքականությունը («Կոտորածների ցեղի մասին», գերմ., 1914), մերկացրել և համաշխարհային հասարակական դատին ներկայացրել առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Գերմանիայի վարած քաղաքականությունը: Հինավուրց մշակույթի տեր հայ ժողովրդի նկատմամբ հարգանքն ու բարյացակամությունն ընդգծելու համար Մ. հայերեն է թարգմանել իր անուն-ազգանունը և երբեմն ստորագրել «Հովսեփ Բդեշխյան»:

*Երկ.* Պարսկահայք նահանգը, «ՊԲՀ», 1961, №1—2: Հայոց այբուբենի ծագումը և Ս.Մաշտոցի կենսագրությունը, տես Մեսրոպ Մաշտոց, հոդվածների ժող., Ե., 1962: Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, Berlin, 1919; Osteuropaische und ostasiatische Streifrüge, Lpz., 1903; Südarmenien und die Tigrisquellen nach griechischen und arabischen Geographen, Wien, 1930.

*Գրկ.* Աբգարյան Գ. Վ., Յոզեֆ Մարկվարտ, «ՊԲՀ», 1965, № 2: *Գ. Աբգարյան*

**ՄԱՐԿՈՒԶԵ** (Marcuse) Հերբերտ (1898—1979), գերմանա-ամերիկյան բուրժուական սոցիոլոգ, *ֆրանկֆուրտյան դպրոցի* հիմնադիրներից: 1934-ից բնակվում էր ԱՄՆ-ում: Մ-ի «քննադատական տեսության» համաձայն («Միաչափ մարդը», 1964), զարգացած կապիտալիստական հասարակարգը հակադիր ուժերի ինտեգրացման հետևանքով դառնում է սոցիալական ամբողջություն, այս պատճառով բանվոր դասակարգը կորցնում է իր հեղափոխական դերը: Մարդը զրկվում է ինքնուրույն դատողության ունակությունից, դառնում «միաչափ»: Նման պայմաններում կազմակերպված բանվորական շարժումը, պառլամենտական պայքարը ևն անօգուտ են. հեղափոխության առաջատար են դարձել ուսանողությունը, լյումպեն պրոլետարիատը, ազգային փոքրամասնությունները ևն: Շնորհիվ իր հայացքների հակաբուրժուական պաթոսի, երիտասարդության բուռն հուզումների շրջանում (1968) Մ. ակամա դարձավ ձախ արմատականների ու ծայրահեղականների հոգևոր հայրը: Մ-ի սոցիալական քննադատությունը թեև տպավորիչ է, սակայն խորը չէ, առաջարկած ծրագիրը՝ ուտոպիական: Մտավորականության հակադրումը բանվոր դասակարգին, կուսակցությունների դերի ժխտումը ջլատում են հեղափոխական ուժերը: Թեև Մ. ելնում է Կ. Մարքսի գաղափարներից և հավակնում է դրանց «ճշմարիտ» մեկնաբանմանը, սակայն էկլեկտիկորեն միացնում է մարքսիզմը նեոհեգելականությանը, էկզիստենցիալիզմին և ֆրոյդիզմին:

*Գրկ.* Баталов Э. Я., Никитич Л. А., Фогелер Я. Г., Поход Маркузе против марксизма, М., 1970; Социальная философия франкфуртской школы, 2 изд., доп., М., 1978.

**ՄԱՐՄԱՆ ԴԵԿՐԵՄԵՆՏ**, մարման լոգարիթմական դեկրեմենտ (<լատ. decrementum — փոքրացում, նվազում), գծային համակարգերում տատանումների մարման քանակական բնութագիր: Որոշվում է $\delta=\ln\frac{x_1}{x_2}$ բանաձևով, որտեղ $x_1$-ը և $x_2$-ը տատանվող ֆիզիկական մեծության իրար հաջորդող (միևնույն նշանի) առավելագույն արժեքներն են: Մ. դ-ի կապը մարման ցուցչի ($\alpha$) և պարբերության ($T$) հետ արտահայտվում է $\delta=\alpha T$ առնչությամբ (տես *Մարող տատանումներ*): Մ. դ-ի մեծությունը հակադարձ է տատանումների այն թվին, որոնց ընթացքում ամպլիտուդը նվազում է e անգամ: Մ. դ-ի բնորոշ արժեքներն են. ձայնային տատանողական համակարգինը՝ 0,1, էլեկտրական տատանողական համակարգինը՝ 0,02—0,05, կամերտոնինը՝ 0, 001: *Ա. Սահակյան*

**ՄԱՐՄԱՇԵՆ**, գյուղ Հայկական ՍՍՀ Ախուրյանի շրջանում, շրջկենտրոնից 13 *կմ* հյուսիս-արևմուտք: Մ-ով է անցնում Լենինական—Ամասիա ավտոճանապարհը և Շիրակի ջրանցքը: Կոլտնտեսությունն զբաղվում է հացահատիկի, կերային, բանջարանոցային կուլտուրաների, շաքարի ճակնդեղի մշակությամբ և անասնապահությամբ: Ունի միջնակարգ և երաժշտական դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան,

Մարմաշեն

կինո, կապի բաժանմունք, հեռախոսակայան, մսուր-մանկապարտեզ, կենցաղսպասարկման տաղավար, բուժկայան: Գյուղում և շրջակայքում պահպանվել են եկեղեցի (վերակառուցված XIX դ.), քարայրբնակարաններ, դամբարաններ: Բնակիչները եկել են Ղարսից (1830-ին):

**ՄԱՐՄԱՇԵՆԻ ՎԱՆՔ**, հայկական ճարտարապետական հուշարձանախումբ ՀՍՍՀ Ախուրյանի շրջանի Վահրամաբերդ գյուղից մոտ 2 *կմ* հարավ-արևմուտք, Ախուր-

Մարմաշենի վանքի (X—XIII դդ.) գլխավոր հատակագիծը



Մարմաշենի վանքի գլխավոր եկեղեցին (988—1029) հարավ-արևմուտքից

յան գետի ձախ ափին: Բաղկացած է երկու հուշարձանախմբից՝ Մեծ և Փոքր (կամ Վերին): Վանքի գլխավոր՝ Կաթողիկե եկեղեցին, ըստ հվ. պատի արձանագրության, կառուցել է իշխան Վահրամ Պահլավունին՝ 988—1029-ին: Սելջուկյան արշավանքներից Մ. վ. զգալի ավերվել է: 1225-ին Վահրամ Պահլավունու թոռներ Գրիգոր արքեպիսկոպոսը և նրա եղբայր Ղարիբը վերա-



Մարմաշենի վանքի գլխավոր եկեղեցու թմբուկը

նորոգել են Կաթողիկեն: Մ. վ-ի գլխավոր եկեղեցին երկու զույգ որմնամույթերով գմբեթավոր դահլիճ է: Ի տարբերություն VII դ. նույնատիպ հուշարձանների, արլ. խաչաթևը կրճատված է, խորանը իր հարակից երկու ավանդատնով մոտեցվել է գմբեթատակ տարածությանը, որի շնորհիվ գմբեթը շենքի արտաքին ծավալում գրավել է կենտրոնական դիրք: Եկեղեցու ներսում որմնամույթերը մշակված են սլացիկ սյունախմբերով: Արլ. խորանը, ինչպես Անիի Մայր տաճարում, մշակված է որմնախորշերով: Ճակատներն արտաքուստ զարդարված են զույգ կիսասյուներով, որոնց վրա ձգվում է կամարաշար: Կենտրոնական որմնակամարը, որը կողայիններից ավելի լայն է, իր մեջ է ներառնում լայն շրջանակով լուսամուտը: Ճակատները մշակված են խոր լուսամուտվեր ստեղծող եռանկյունաձև խորշերով: 12-նիստանի թմբուկը, որ պսակված է բրգաձև ծածկով, նույնպես մշակված է կիսասյուների փնջերով, որոնք միմյանց են կապվում փոքրիկ ճակտոններով: Մ. վ-ի Կաթողիկեն հայկ. ճարտ-յան Բագրատունիների ժամանակաշրջանի լավագույն հուշարձաններից է: Վանքի երկրորդ եկեղեցին Կաթողիկեից հս. է, գրեթե նրան կից, և, հավանաբար, վերջինիս հետ միաժամանակ է կառուցվել: Պահպանվել են միայն սրբատաշ կարմիր տուֆի խոշոր քարերից շարված հս. և արլ. պատերը, որոնք ցույց են տալիս եկեղեցու՝ Կաթողիկեի փոքրացված ընդօրինակություն լինելը թե՛ հորինվածքով (գմբեթավոր դահլիճ), թե՛ ճարտ. մանրամասներով ու հարդարանքով: Երրորդ եկեղեցին (XI դ.) Կաթողիկեից հվ. է: Այն ներքուստ խաչաձև է՝ չորս անկյուններում ավանդատներով, արտաքուստ ուղղանկյուն կենտրոնագմբեթ կառույց է: Կաթողիկեին արմ-ից կից է XIII դ. այդ շինություններին բնորոշ, չորս սյուներով, կենտրոնակազմ հորինվածքով գավիթը (պահպանվել են պատերի ստորին մասերը և սյուների՝ հրդեհից ճաքճքված խարիսխները): Ծառայել է որպես տապանատուն, այստեղ է թաղված Վահրամ Պահլավունին, որի այժմյան տապանաքարը XIX դ. գործ է: Գավթից հվ-արմ. 1954—56-ի պեղումներից բացվել է վանքի չորրորդ եկեղեցին՝ արտաքուստ կլոր, ներսից չորս փոքրիկ ավանդատներով, քառաբսիդ հորինվածքով (նման է Խծկոնքի Ս. Սարգիս տաճարին, XI դ.): Պահպանվել են նրա բարդ տրամատով, բարձր միաստիճան գետնախարիսխը և պատերի ստորին երկու շարքերը: Հուշարձանախմբի արլ-ում և հվ-ում գերեզմանատունն է: Վանքն ունեցել է իր ջրմուղը, որի հատվածները հայտնաբերվել են գավթից արմ.: Փոքր Մարմաշենը կամ Վերին Վանքը Մեծից հս. է, բլրակի վրա: Մ. վ. եղել է Հայաստանի կրոնական ու մշակութային նշանավոր կենտրոն, այն հայկ. ճարտ. արժեքավոր անսամբլներից է:

Պատկերազարդումը տես 305-րդ էջից առաջ՝ ներդիրում:

*Գրկ.* Եղիազարյան Հ., Մարմաշենի վանքը և նրա վիմագրությունները, «Էջմիածին», 1957, № 5: Якобсон А. Л., Очерк истории зодчества Армении V—XVII вв., М.—Л., 1950; Cuneo P., L' architectura della scuola regionale di Ani nell' Armenia medievalle, Roma, 1977.

*Ա. Յակոբսոն, Մ. Հասրաթյան*

**ՄԱՐՄԱՐ** (հուն. μάρμαρος, լատ. marmor— փայլուն քար), բյուրեղային ապար, որ առաջացել է *կրաքարի* կամ *դոլոմիտի* վերաբյուրեղացման հետևանքով: Շինարարական պրակտիկայում Մ. են կոչվում միջին կարծրության, ողորկելի մետամորֆային ապարները (Մ., մարմարացված կրաքար, խիտ դոլոմիտ, կարբոնատային բրեկչիաներ, կարբոնատային կոնգլոմերատներ): Մ. գրեթե միշտ պարունակում է այլ միներալների (քվարց, խալցեդոն, հեմատիտ, պիրիտ, լիմոնիտ, քլորիտ) խառնուրդներ, ինչպես նաև օրգանական միացություններ: Խառնուրդները տարբեր կերպ են ազդում Մ-ի որակի վրա՝ նվազեցնելով կամ բարձրացնելով նրա դեկորատիվությունը: Մ-ի ծավալային զանգվածը 2, 65—2, 90 է, դիմադրությունը սեղմմանը՝ 50—250 *Մն/մ²* (500—2500 *կգ/սմ²*), մաշվելիությունը՝ 0,40—3,20 *գ/սմ²*, ջրակլանելիությունը՝ 0,15—0,50 %: Ամենամեծ ամրությամբ և լավագույն ողորկելիությամբ աչքի են ընկնում հատիկների ատամնավոր կապով մանրաբյուրեղ Մ-ները: Ըստ ստրուկտուրայի համասեռ Մ-ները ցրտակայուն են: Մ-ի գույնը կախված է խառնուրդներից: Գունավոր Մ-ների զգալի մասն ունի խայտաբղետ երանգավորում: Զարդանկարը որոշվում է ոչ միայն Մ-ի կառուցվածքով, այլև այն ուղղությամբ, որով սղոցվում է քարը: Մ-ի գունավորումը և զարդանկարը բացահայտվում են նրա ողորկումից հետո: Մ-ի հանքավայրը գնահատելու դեպքում հաշվի են առնում մոտիկ տրանսպորտային ուղիների առկայությունը, ինչպես նաև հողմահարված Մ-ի ծածկող շերտի հզորությունը (սովորաբար թույլատրվում է 5—8 *մ*): Մ. արդյունահանվում է բացահանքերում, սակավ՝ ստորգետնյա եղանակով: Մենաքարեր ստանալու համար օգտագործվում են *քարհատ մեքենաներ*, ճոպանային սղոցներ ևն: Պլաստիկ և դեկորատիվ արժանիքների շնորհիվ (կարծրություն, մանրահատիկություն, որ հնարավոր է դարձնում մշակումն ու ողորկումը, այդ միջոցով՝ Մ-ի երանգային հարդարությունը դրսևորելու կարելիություն) Մ., որպես ճարտ. կառուցվածքային և երեսպատման նյութ, կիրառվել է անտիկ շրջանից: Օգտագործվում է նաև խճանկար



Օ. Ռոդեն. «Հավերժ գարուն», մարմար (1897, Էրմիտաժ, Լենինգրադ)

հորինվածքներ, ռելիեֆներ և կլոր քանդակներ ստեղծելիս (սովորաբար՝ միագույն Մ., մեծ մասամբ՝ սպիտակ, սակավ՝ գունավոր կամ սև): Մ-ի հարաբերական թափանցիկությունը լույսի և ստվերի նրբագույն խաղեր է առաջացնում քանդակի մակերեսին: ՍՍՀՄ-ում հայտնի են Մ-ի և մարմարացված կրաքարի մոտ 60 հանքավայր (Կարելիա, Ուկրաինա, Ուրալ, Անդրկովկաս, Միջին Ասիա, Սիբիր, Հեռավոր Արևելք): Սովետական Միության Մ-ի պաշարները գործնականորեն անսպառ են: Այդ հանքավայրերի սպիտակ Մ-ի լավագույն տեսակները օգտագործվում են

քանդակագործության մեջ: Արտասահմանում հայտնի են Իտալիայի (Կարրարայի, ուր արդյունահանվում է քանդակագործության համար ամենալավ Մ.՝ սպիտակ, փայլուն, դյուրավ ողորկելի) և Հունաստանի (Պարոսի, ուր արդյունահանվում է դեղնավուն երանգով Մ., որը ծառայում էր տակավին հին հույն քանդակագործներին) հանքավայրերը: Մ-ի հանքավայրեր կան նաև Կուբայում, Ֆրանսիայում, Նորվեգիայում, ԱՄՆ-ում:

Հայերեն Մ. կոչվում է նաև կուճ: Հայկական Մ-ներն իրենց տեսքով ու ֆիզիկական հատկություններով չեն զիջում աշխարհում հայտնի հունականին և իտալականին: Մեր Մ-ներն ունեն ոչ միայն դեկորատիվ, տեխ., այլև շինարարական հիանալի հատկություններ և օգտագործվում են շենքերի ներքին հարդարանքի, քանդակագործության ու գեղազարդման նպատակներով: ՀՍՍՀ-ում հայտնի Մ-ի երկու տասնյակ հանքավայրերից շահագործվում են Արարատի, Խոր Վիրապի, Մարմարաշենի, Աղվերան—Արզականի, Իջևանի հանքավայրերը, որոնցից արդյունահանվում է տարեկան 500—600 *մ*$^3$ Մ.: Հայաստանի Մ-ները մշակվում են Երևանի «*Հայմարմար*» կոմբինատում:

**«ՄԱՐՄԱՐԱ»**, քաղաքական, հասարակական օրաթերթ: Լույս է տեսնում 1940-ից, Ստամբուլում: Արտոնատեր-խմբագրապետ՝ Պ. Զոպյան (սկզբնական շրջանում՝ Ս. Շամլյան): Լայն տեղ է հատկացնում Թուրքիայի ներքաղաքական կյանքին, որպես աղբյուր օգտագործելով թուրք. մամուլի նյութերը: Պոլսահայ գաղութի կյանքը ներկայացնում է եկեղեցական, դպրոցական, մշակութային իրադարձությունների վերաբերյալ տեղեկություններով: Տպագրում է հայագիտական հոդվածներ:

**ՄԱՐՄԱՐԱ ԾՈՎ** (թուրք. Marmara, անվանումն ստացել է նույն ծովում գտնվող համանուն կղզուց, որտեղ կան սպիտակ մարմարի հարուստ պաշարներ), Ատլանտյան օվկիանոսի միջերկրական ծով՝ Եվրոպայի և Փոքր Ասիայի միջև: Բոսֆորի և Դարդանելի նեղուցներով միանում է Սև և Եգեյան ծովերին: Տարածությունը 11472 *կմ*$^2$ է, խորությունը՝ մինչև 1355 *մ*: Առաջացել է երկրակեղևի խոշոր կոտրվածքի հետևանքով: Մ. ծ. չի սառչում, մակերեսային ջրերի ջերմաստիճանը 9°C-ից (ձմռանը) 29°C է (ամռանը), աղիությունը՝ մինչև 26‰: Կա ձկնորսություն: Մ-ով են անցնում Սև և Միջերկրական ծովերի հաղորդակցության կարևոր ուղիները, հս. ափին է Ստամբուլը:

**ՄԱՐՄԱՐԱՇԵՆ**, գյուղ Հայկական ՍՍՀ Մասիսի շրջանում, շրջկենտրոնից 6 *կմ* հարավ-արևելք: Մ-ով է անցնում Երևան—Արտաշատ ավտոխճուղին: Կոլտնտեսությունն զբաղվում է բանջարաբուծությամբ և անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կապի բաժանմունք, կինո, հեռախոսակայան, կենցաղսպասարկման տաղավար, մսուր-մանկապարտեզ, բուժկայան: Հիմնադրվել է 1820-ին: Մ-ում է ծնվել Սովետական Միության հերոս Վ. Առուստամյանը:



Մարմարաշեն

**ՄԱՐՄԱՐԻԿ**, գետ Հայկական ՍՍՀ Հրազդանի շրջանում, Հրազդան գետի աջ վտակը: Երկարությունը 42 *կմ* է, ավազանը՝ 427 *կմ*$^2$: Սկիզբ է առնում Փամբակի լեռնաշղթայից, հոսում՝ հս-արմ-ից հվ-արլ., Ջրառատ գյուղի մոտ միանում Հրազդանին: Ունի խառը սնում, հորդանում է գարնանը: Տարեկան միջին ծախսը 5,4 *մ*$^3$/*վրկ* է, առավելագույնը՝ 87 *մ*$^3$/*վրկ*, նվազագույնը՝ 1,1 *մ*$^3$/*վրկ* (Աղավնաձոր): Ջրերն օգտագործվում են ոռոգման և արդ. նպատակներով: Վերին հոսանքի ավազանում կան հանքային աղբյուրներ (Հանքավան):

**ՄԱՐՄԱՐԻԿ**, գյուղ Հայկական ՍՍՀ Հրազդանի շրջանում, Փամբակ և Ծաղկունյաց լեռնաշղթաների միջև, նույնանուն գետի հովտում, շրջկենտրոնից 12 *կմ* հյուսիս-արևմուտք: Կոլտնտեսությունն զբաղվում



Մարմարիկ

է անասնապահությամբ, հացահատիկի, կարտոֆիլի, կաղամբի, ծխախոտի մշակությամբ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, բուժկայան: Գյուղում պահպանվել է Ս. Հովհաննես եկեղեցին:

**ՄԱՐՄԵՏ**, Մ ա ր մ ե դ, գյուղ Արևմտյան Հայաստանում, Վանի վիլայեթի Թիմարի գավառում, Վանից 11—12 *կմ* հեռավորության վրա: Ըստ տարբեր աղբյուրների, XX դ. սկզբին ունեցել է 135—180 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին հացահատիկների մշակությամբ, այգեգործությամբ, բանջարաբուծությամբ, անասնապահությամբ և արհեստներով: Գյուղում կար եկեղեցի և վարժարան: Մ-ի հայերը ենթարկվել են Մեծ եղեռնի արհավիրքին, տվել զոհեր, իսկ կենդանի մնացածները գաղթել են Արևելյան Հայաստան:

*Թ. Հակոբյան*

**ՄԱՐՄԻՆՆԵՐԻ ԱՆԿՈՒՄ**, մարմինների շարժումը Երկրի ձգողության դաշտում՝ առանց սկզբնական արագության: Այդ շարժման վրա, ձգողության ուժից բացի, ազդում են նաև Երկրի օրական պտույտն իր առանցքի շուրջը և օդի դիմադրության ուժը: Երկրի շառավղի համեմատությամբ փոքր h բարձրությունից անկման դեպքում, երբ կարելի է օդի դիմադրությունն անտեսել, իսկ ձգողության ուժը համարել հաստատուն, շարժումը կոչվում է *ազատ անկում*: Այդ դեպքում h բարձրությունից ընկնող մարմնի վերջնական արագությունը որոշվում է $v=\sqrt{2gh}$ բանաձևով, որտեղ g-ն ազատ անկման արագացումն է:

Երկրի օրական պտույտի հետևանքով Մ. ա-ման ժամանակ առաջանում են իներցիայի փոխադրական (կենտրոնախույս) ուժը, որը ձգողության ուժի հետ տալիս է *ծանրության ուժը*, և իներցիայի *Կորիոլիսի ուժը*, որի պատճառով Մ. ա-ման հետագիծը ուղղաձիգից շեղվում է դեպի արլ. (100 *մ* բարձրությունից անկման դեպքում մոտ 1 *սմ*): Օդի դիմադրությունը կարող է էապես ազդել Մ. ա-ման բնույթի վրա: Ոչ շատ մեծ արագությունների (գործնականորեն՝ մինչև 300 *մ*/*վրկ* կարգի) դեպքում օդի դիմադրության ուժը համեմատական է արագության քառակուսուն՝ $R=kv^2$, որտեղ k-ն դիմադրության գործակիցն է, որը կախված է մարմնի ձևից, օդի խտությունից ու, այսպես կոչված, *միդելային հատվածքի* մակերեսից: Այդ դեպքում, h բարձրությունից ընկնելիս, m զանգվածով մարմնի արագությունը որոշվում է $v=v_{uh}\sqrt{1-\exp(-2gh/v_{uh})^2}$ բանաձևով, որտեղ $v_{uh}=\sqrt{\frac{mg}{k}}$-ը սահմանային արագությունն է, որը մարմինը ձեռք կբերեր շատ մեծ բարձրությունից ընկնելիս: k-ի բավական մեծ արժեքների դեպքում, փոքր սկզբնական ճանապարհ անցնելուց հետո, մարմնի արագությունը գործնականորեն հասնում է $v_{uh}$-ի, որից հետո այն շարժվում է հավասարաչափ:

*Վ. Վարդանյան*

**ՄԱՐՄԻՆՆԵՐԻ ԼՈՂԱԼԸ**, հեղուկում (կամ գազում) մասնակի կամ ամբողջությամբ ընկղմված պինդ մարմնի հավասարակշռության վիճակ: Մ. լ-ու տեսության հիմնական խնդիրը հեղուկում ընկղմված մարմնի հավասարակշռության դիրքերի որոշումն է, հավասարակշռության կայունության պայմանների բացահայտումը: Մ. լ-ու պարզագույն պայմանները նշված են *Արքիմեդի օրենքում*: Լողացող մարմնի հավասարակշռության համար անհրաժեշտ է, որ մարմնի ու նրա դուրս մղած հեղուկի (կամ գազի) կշիռները լինեն հավասար, և որ այդ մարմնի ու դուրս մղած հեղուկի (կամ գազի) ծանրության կենտրոնները գտնվեն մի ուղղաձիգի վրա: Մ. լ. կայուն կլինի միայն այն դեպքում, երբ լողացող մարմնի ծանրության կենտրոնը *մետակենտրոնից* ներքև է գտնվում:

**ՄԱՐՄՆԱԿԱՆ ՆՅԱՐԴԱՅԻՆ ՀԱՄԱԿԱՐԳ**, ս ո մ ա տ ի կ ն յ ա ր դ ա յ ի ն հ ա մ ա կ ա ր գ, զգայական ու մարմնաշարժական նյարդաթելերի և գլխուղեղի ու ողնուղեղի համապատասխան գոյացու-

թյունների ամբողջությունը: Ողնաշարավոր կենդանիների և մարդու Մ. ն. հ. նյարդավորում է մարմնի մասերի, ինչպես նաև ամբողջական օրգանիզմի տեղաշարժումները տարածության մեջ ապահովող միջաձիգ զոլավոր մկանները, ապահովում կմախքային մկանների ռեֆլեքսային տոնուսը և դրա վերաբաշխումը տարբեր մկանախմբերի միջև: Վերջինս կարևոր է մարմնի բնականոն կեցվածքի ապահովման համար, ինչպես շարժման, այնպես էլ հարաբերական հանգստի պայմաններում:

**ՄԱՐՄՆԱԿԱՆ ՊԱՏԻԺՆԵՐ**, *պատժի* տեսակ. սկիզբ է առել հին աշխարհում և որոշ երկրներում հարատևել մինչև XX դ.: Հետապնդել է դատապարտյալին հրապարակայնորեն տանջահարելու նպատակ. ծեծ (մահակով, մտրակով, ճիպոտով ևն), անդամահատում, խարանում, լեզվահատում ևն: Լայնորեն կիրառվել է հարկերի (Հին Եգիպտոս), պարտքերի (Ռուսաստան) գանձման պրակտիկայում, համարվել է ստրուկների, ճորտերի հետ հաշվեհարդար տեսնելու ընդունված միջոց: XII[I] դ. սկսած Մ. պ. ամրապնդվել են Արևմտյան Եվրոպայի բազմաթիվ երկրների օրենսդրությամբ: Հին և միջնադարյան Հայաստանում կիրառվել են ծեծը, անվահարումը և այլ Մ. պ.:

**ՄԱՐՄՆԱԿԱՆ ՎՆԱՍՎԱԾՔՆԵՐ**, ըստ սովետական քրեական իրավունքի, մեկ անձի հասցրած վնասը մյուսի առողջությանը, որի հետևանքով տուժողը ստանում է որևէ օրգանի կամ հյուսվածքի անատոմիական ամբողջականության կամ ֆիզիոլոգիական ֆունկցիայի խախտում: Տարբերում են՝ ծանր, նվազ ծանր և թեթև Մ. վ.: Մ. վ. ծ ա ն ր են, եթե կյանքի համար վտանգավոր են (անկախ հետևանքից), առաջացնում են տեսողության, լսողության կամ մարմնի որևէ օրգանի կորուստ, կամ օրգանի ֆունկցիայի անկում, կամ հոգեկան հիվանդություն, կամ աշխատունակության 1/3-ից ավելի կայուն կորուստ, կամ հղիության ընդհատում, կամ դեմքի անջնջելի այլանդակում: Ն վ ա զ ծ ա ն ր Մ. վ. *կյանքի համար վտանգավոր չեն*, չեն առաջացնում հիշյալ հետևանքները, սակայն պատճառում են առողջության երկարատև խախտում (չորս շաբաթից ավելի) և 1/3-ից պակաս աշխատունակության կայուն կորուստ: Թ ե թ և Մ. վ. են համարվում այն վնասվածքները, որոնց հետևում են առողջության կարճատև խախտում (7 օրից 4 շաբաթ) կամ աշխատունակության աննշան կայուն կորուստ, ինչպես նաև այն Մ. վ., որոնք այդպիսի հետևանքներ չեն առաջացրել: Մ. վ-ի համար պատժաչափը որոշվում է ըստ մեղքի և կախված է այն բանից, թե արդյոք դրանք հասցված են դիտավորությամբ կամ թե անզգուշությամբ, ինչպես նաև դրանց ծանրության աստիճանից, որը որոշվում է *դատական փորձաքննությամբ*: Խստացնող հանգամանքներ են՝ դիտավորյալ հասցրած ծանր մարմնական վնասվածքի հետևանքով առաջացած տուժողի մահը, արարքի կատարումը առանձնապես վտանգավոր ռեցիդիվիստի կողմից, տանջանքների և խոշտանգումների գործադրումը: Պատիժը մեղմանում է անհրաժեշտ պաշտպանության, տուժողից կրած բռնության կամ ծանր վիրավորանքի հետևանքով հանկարծակի առաջացած հոգեկան խիստ հուզմունքի ժամանակ հասցրած Մ. վ-ի դեպքում: Ըստ «Կանոնագիրք հայոց»-ի, Մխիթար Գոշի և Սմբատ Սպարապետի դատաստանագրքերի, Հայաստանում Մ. վ-ի համար սահմանվել են ապաշխարանք, նյութական հատուցում, մարմնական և այլ պատիժներ:

**«ՄԱՐՄՆԱՄԱՐԶ»**, պատկերազարդ ամսագիր: Լույս է տեսել 1911—14-ին, Կ. Պոլսում: Խմբագիր-հրատարակիչ՝ Շ. Քրիսյան: Տպագրել է հոդվածներ ֆիզկուլտուրայի և սպորտի վերաբերյալ, ուսուցանել մարմնամարզական վարժություններ: Հայ երիտասարդությանը համախմբել է մարզական ակումբների շուրջ: «Մ.»-ի նախաձեռնությամբ են կազմակերպվել հայկ. առաջին օլիմպիական խաղերը Կ. Պոլսում (1911): Անդրադարձել է նաև երեխաների բարոյական դաստիարակության հարցերին:

*Մ. Նալչաջյան*

**ՄԱՐՄՆԱՄԱՐԶՈՒԹՅՈՒՆ**, մարդու առողջության և դիմացկունության ամրապնդմանը, ֆիզիկական ներդաշնակ զարգացմանը, ուժի, ճարպկության և շարժունակության կատարելագործմանը նպաստող հատուկ վարժությունների և մեթոդական վարժաձևերի համակարգ: Մարմնամարզական վարժությունները լինում են. շարային (օգնում են մշակելու ճիշտ քայլք,



Հենացատկ (Մ. Գրիգորյան)

վազք, կեցվածք ևն), ընդհանուր զարգացման (նպաստում են ընդհանուր ֆիզիկական զարգացմանը, նախապատրաստում առավել բարդ շարժական գործունեության), կիրառական (ձևավորում են անհրաժեշտ ֆիզ. ունակություններ), ազատ (զարգացնում և կատարելագործում են



Ազատ վարժություններ (Է. Միքայելյան)



Վարժություններ օղակների վրա (Է. Ազարյան)

ունակությունների ներդաշնակություն), մարմնամարզական գործիքների վրա (զարգացնում են ուժ, ճարպկություն,



Վարժություններ նժույգի վրա (Ա. Ազնավուրյան)

շարժումների առավելագույն ներդաշնակություն), ցատկեր և հենացատկեր (մարզում են շնչառական օրգանները, բարելավում արյան շրջանառությունը, զարգացնում ոտքի մկանները): ՍՍՀՄ-ում տարածված են հիմնական Մ. (ներառյալ հիգիենիկ և աթլետիկական), *արտադրական մարմնամարզությունը*, կիրառական Մ., սպորտային Մ., գեղարվեստական Մ. և *ակրոբատիկան*:

Գ ե ղ ա ր վ ե ս տ ա կ ա ն Մ., կանանց մարզաձև: Երաժշտության ուղեկցությամբ պարային և մարմնամարզական վարժությունների համակցում առարկայով (ժապավեն, գնդակ, օղ, ցատկապարան, գուրզ) կամ առանց առարկայի: Որպես մարզաձև ՍՍՀՄ-ում ձևավորվել է 1940-ական թթ.: Ժամանակակից մրցումների ծրագիրն է. բազմամարտ (մեկ պարտադիր և երեք ազատ վարժություն՝ առարկաներով) և խմբակային (ազատ վարժություններ՝ առարկաներով): Մարզուհիների ելույթները գնահատվում են 10-բալյան սիստեմով: Կենտ տարիներին (1963-ից) անց է կացվում աշխարհի առաջնություն: Աշխարհի բացարձակ չեմպիոնուհիներ են դարձել Լ. Սավինկովան, Ե. Կարպուխինան, Գ. Շուգուրովան և Ի. Դերյուգինան: Գեղարվեստական Մ-ի զարգացմանը նպաստել են վաստակավոր մարզիչներ Վ. Բատաեևը, Գ. Գորենկովան, Մ. Լիսիցյանը, Ա. Դերյուգինան և ուրիշներ: Գեղարվեստական Մ. Հայաստանում զարգացում է ապրում 1950-ական թթ.: Ճանաչված մարզուհիներից են Կ. Մկրտչյանը, Կ. Բալումյանը: Երևանում գործում է գեղարվեստական Մ-յան և ակրոբատիկայի մասնագիտացված դպրոց:

Ս պ ո ր տ ա յ ի ն Մ., մարզաձև: Մրցումների ձևերն են. կանանց համար՝ տարբեր բարձրության զուգափայտերի, մարմնամարզական գերանի վրա և ազատ վար-

ժություններ, հենացատկեր, տղամարդկանց՝ նժույգի, օղակների, զուգափայտերի, պտտաձողի վրա և ազատ վարժություններ, հենացատկեր: Բազմամարտի ժամանակակից ծրագիրը պարունակում է պարտադիր և կամավոր վարժություններ:



Վարժություններ զուգափայտի վրա (Ա. Հակոբյան)

Մարմնամարզության միջազգային ֆեդերացիան (ՖՄՄ) ստեղծվել է 1881-ին (մարզական միջազգային առաջին կազմակերպությունը): Ռուսաստանում առաջին մրցումները կազմակերպվել են 1885-ին, 1896-ից Մ. օլիմպիական մրցաձև է: 1908-ից անց է կացվում աշխարհի առաջնություն (1922-ից՝ 4 տարին մեկ): ՍՍՀՄ անդրանիկ առաջնությունն անց է կացվել 1928-ին (1932-ից մասնակցում են նաև կանայք):



Վարժություններ պտտաձողի վրա (Ռ. Միքայելյան)

Հայաստանում առաջին պաշտոնական մրցումները կազմակերպվել են 1936-ին: Երևանում գործում է սպորտային Մ-յան մասնագիտացված 5 դպրոց (1980): Սովետական հանրահայտ մարմնամարզիկներ են Լ. Լատինինան, Լ. Տուրիշչևան, Օ. Կորբուտը, Վ. Մուրատովը, Վ. Չուկարինը, Բ. Շախլինը, Հ. Շահինյանը, Ա. Ազարյանը, Յու. Տիտովը, Ա. Աղնավուրյանը, Վ. Հակոբյանը, Ն. Անդրիանովը, Ա. Դիտյատինը, Է. Միքայելյանը, Է. Ազարյանը, Ա. Հակոբյանը և ուրիշներ: Հիմնական Մ., կիրառվում է դպրոցական տարիքի երեխաների ընդհանուր ֆիզիկական զարգացման և առողջության ամրապնդման համար:

**ՄԱՐՄՆԱՅԻՆ ԱՆԿՅՈՒՆ**, տարածության մաս, որը սահմանափակված է կոնական մակերևույթով: Մ. ա-յան մասնավոր դեպքերն են եռանիստ և բազմանիստ անկյունները: Մ. ա. չափվում է կոնական մակերևույթի գագաթը որպես կենտրոն ունեցող ոլորտից Մ. ա-ով անջատվող մասի S մակերեսի և ոլորտի շառավիղի քառակուսու հարաբերությամբ, ուստի Մ. ա չափվում է վերացական թվով: Մ. ա-յան չափման միավորն է *ստերադիանը*:

**ՄԱՐՄՆԻ ԱՌԱՋՆԱՅԻՆ ԽՈՌՈՉ**, որոշ բազմաբջիջ կենդանիների մարմնի պատի և աղիքների միջև եղած տարածություն, որտեղ տեղավորվում են ներքին օրգանները: Լավ զարգացած է միայն առաջնախոռոչավոր որդերի մոտ և բնորոշվում է սեփական բջջապատի բացակայությամբ: Փափկամորթների Մ. ա. խ. ծոցերի և խորշիկների համակարգ է, իսկ բարձրակարգ կենդանիների մոտ այն փոխարինվել է *մարմնի երկրորդային խոռոչով* (ցելոմ): Հոդվածոտանիների Մ. ա. խ. սաղմնային զարգացման ընթացքում միաձուլվում է ցելոմի հետ և առաջացնում մարմնի խառը խոռոչ (միքսոցել):

**ՄԱՐՄՆԻ ԵՐԿՐՈՐԴԱՅԻՆ ԽՈՌՈՉ**, ցելոմ, բարձրակարգ բազմաբջիջ կենդանիների մարմնի պատի և ներքին օրգանների միջև գտնվող տարածություն, որը շրջափակված է մեզոդերմային ծագում ունեցող էպիթելային թաղանթներով: Պարունակում է ցելոմային հեղուկ և սովորաբար դուրս է բացվում հատուկ ծորաններով՝ ցելոմոդուկտներով: Կատարում է հիմնականում հենարանային, ինչպես նաև սնուցողական, շնչառական, արտաթորական, սեռական են ֆունկցիաներ: Պահպանում է օրգանիզմի ներքին միջավայրի կենսաքիմիական կայունությունը: Ցելոմը բնորոշ է բարձրակարգ առաջնաբերանավորներին (փափկամորթներ, օղակավոր որդեր են) և երկրորդաբերանավորներին (կիսաքորդավորներ, փշամորթներ, քորդավորներ): Փափկամորթների, ողնաշարավորների և մարդու մոտ ցելոմից առաջանում են սրտապարկը՝ պերիկարդը և որովայնային խոռոչը:

**ՄԱՐՄՈՒՍ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Մանազկերտի գավառում: 1909-ին ուներ 25 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է աքսորի ճանապարհին:

**ՄԱՐՅԱՆԵՆԿՈ** (իսկական ազգանունը՝ Պետլիշենկո) Իվան Ալեքսանդրովիչ (1878—1962), ուկրաինացի սովետական դերասան: ՍՍՀՄ ժող. արտիստ (1944): Բեմական գործունեությունն սկսել է 1895-ից՝ Մ. Լ. Կրոպիվնիցկու թատերախմբում: 1899-ից աշխատել է Օ. Զ. Սուսլովի, Ն. Կ. Սադովսկու թատերախմբերում, Կիևի պետ. դրամատիկական թատրոնում: 1923—58-ին (բացի 1925-ից) եղել է Խարկովի Տ. Գ. Շևչենկոյի անվ. դրամատիկական թատրոնի (նախկինում՝ «Բերեզիլ» թատրոն) դերասան: Լավագույն դերերից են՝ Գոնտա («Հայդամակներ», ըստ Շևչենկոյի), Օմելկո (Կարպենկո-Կարիի «Մարտին Բորուլյա»), Պրոխոր (Գորկու «Վասսա Ժելեզնովա»), Բոգդան Խմելնիցկի (Կոռնեյչուկի «Բոգդան Խմելնիցկի»), Յարոսլավ Իմաստուն (Կոչերգայի «Յարոսլավ Իմաստուն»): Շարունակել է Մ. Լ. Կրոպիվնիցկու, Ն. Կ. Սադովսկու, Մ. Կ. Զանկովեցկայայի ռեալիստական ավանդույթները: 1917-ից զբաղվել է մանկավարժությամբ (պրոֆեսոր՝ 1946-ից): Արժանացել է ՍՍՀՄ պետ. մրցանակի (1947):

**ՄԱՐՇԱԼ** (Marshall) Ալան (ծն. 2.5.1902, Նուրատ), ավստրալիացի գրող: 1930-ական թթ. հանդես է եկել որպես նովելագիր: Երկրորդ համաշխարհային պատերազմի (1939—45) տարիներին եղել է ճակատային թերթի թղթակից: «Սա իմ ժողովուրդն է» (1944) ճամփորդական նոթերի, «Մենք էլ այդպիսի մարդ ենք» (1948) ակնարկների գրքի, «Ի՞նչ գեղեցիկ են քո ոտքերը» (1949) վեպի և մանկական պատմվածքների հեղինակ է: Մ. նովելագիրը զարգացրել է Հ. Լոուսոնի ավանդույթները («Պատմիր 'մեզ հնդկահավի մասին, Ջո», 1946, «Ինչպե՞ս ես, Էնդի», 1956): Հեղինակի ինքնակենսագրությունն է «Ես կարող եմ թռչել ջրափոսերի վրայով» (1955), «Սա այն խոտն է, որ աճում է ամենուր» (1962), «Իմ սրտում» (1963) եռերգությունը: Մ. ապրել է Ավստրալիայի բնիկների մեջ, հավաքել ու մշակել նրանց լեգենդները («Անհիշելի ժամանակների մարդիկ», 1952): Ավստրալա-սովետական բարեկամության ընկերության փոխնախագահն է:

**ՄԱՐՇԱԼ** (Marshall) Ջորջ Քեթլետ (1880—1959), ԱՄՆ-ի պետական և զինվորական գործիչ, բանակի գեներալ (1944): Ավարտել է Վիրջինիայի ռազմ. կոլեջը (1901), ծառայել ամերիկյան զորքերում (Ֆիլիպիններ, Եվրոպա, Չինաստան, ԱՄՆ): 1939—45-ին՝ ԱՄՆ բանակի շտաբի պետ. մասնակցել է երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակաշրջանի կարևոր միջազգային կոնֆերանսներին (Թեհրանում, Յալթայում, Պոտսդամում են): 1947—49-ին՝ ԱՄՆ պետ. քարտուղար, «սառը պատերազմի» քաղաքականության նախաձեռնողներից: Ակտիվորեն մասնակցել է «*Տրումենի դոկտրինայի*» և «*Մարշալի պլանի*» մշակմանը: 1950—51-ին եղել է պաշտպանության մինիստր:

**ՄԱՐՇԱԼ** (ֆրանս. maréchal, < հին վերին գերմ. marah — ձի և scale — ծառա), 1. պալատական կոչում միջնադարյան Ֆրանսիայում. արքունի ծառա՝ ախոռապետ, պալատական պաշտոնյա (հետևում էր թիկնապահներին), XIII դարից՝ զինվորական կոչում: 2. Բարձրագույն զինվորական կոչում մի շարք երկրների բանակներում (XVI դարից՝ Ֆրանսիայում, XIX դարից՝ Իսպանիայում, Թուրքիայում, Իտալիայում, Ճապոնիայում, XX դարից՝ Մեծ Բրիտանիայում, Հնդկաստանում, Լեհաստանում, Ֆինլանդիայում, Ռումինիայում, Չինաստանում, ԿԺԴՀ-ում, Հարավսլավիայում, Բուլղարիայում): Ավստրիայում, Պրուսիայում և Ռուսաստանում Մ. համապատասխանել է գեներալ-ֆելդմարշալին: ՍՍՀՄ-ում 1935-ից հաստատվել է Սովետական Միության Մ. (ռազմածովային ուժերում համապատասխանաբար՝ Սովետական Միության նավատորմի ծովակալ), 1943-ից՝ զորատեսակների Մ. (ավիացիայի, հրետանու, զրահատանկային զորքերի, ինժեներական և կապի զորքերի), նաև զորատեսակների գլխավոր Մ.: 3. Լեհաստանում քաղաքացիական որոշ պաշտոնյաների կոչում (Սեյմի Մ., Սեյմի փոխ-Մ.):

Արևմտահայերենում Մ-ի հոմանիշն է *մարաջախտը*:

Հայ զորավարներից Մ-ի կոչման արժանացել են Հ. Բաղրամյանը (Սովետական Միության Մ.), Հ. Իսակովը (Սովետական Միության նավատորմի ծովակալ), Ս. Խուդյակովը՝ Ս. Խանփերյանց (ավիացիայի Մ.), Հ. Բաբաջանյանը (զրահատանկային զորքերի գլխավոր Մ.), Ս. Աղանովը (ինժեներական զորքերի Մ.):

*Մ. Կարապետյան*

**«ՄԱՐՇԱԼԻ ՊԼԱՆ»**, երկրորդ համաշխարհային պատերազմից (1939—45) հետո ԱՄՆ-ի տնտեսական օգնությամբ, այսպես կոչված, Եվրոպայի վերականգնման և զարգացման ծրագիր: Նպատակն էր՝ ամրապնդել պատերազմի հետևանքով կապիտալիզմի խախտված դիրքերը Արևմտյան Եվրոպայում, խոչընդոտել առաջադիմական սոցիալական փոփոխությունները մայր ցամաքի երկրներում, միասնական իմպերիալիստական ճակատ ստեղծել Սովետական Միության և կազմավորվող սոցիալիստական համաշխարհային սիստեմի դեմ: «Մ. պ.» և «*Տրումենի դոկտրինան*» նախորդեցին և նպաստեցին ՆԱՏՕ-ի ագրեսիվ բլոկի ստեղծմանը (1949): «Մ. պ.»-ի գաղափարը առաջ է քաշել ԱՄՆ-ի պետ. քարտուղար Ջ. *Մարշալը* (նրա անունով էլ կոչվել է) 1947-ի հունիսի 5-ին, որը պաշտպանություն գտավ Անգլիայի ու Ֆրանսիայի կողմից: Չորս տերությունների (ԱՄՆ, Մեծ Բրիտանիա, Ֆրանսիա, ՍՍՀՄ) արտաքին գործերի մինիստրների խորհրդակցությունում (1947-ի հունիս—հուլիս) նրանք առաջարկեցին Եվրոպայում ստեղծել «ղեկավար կոմիտե»՝ եվրոպական երկրների ռեսուրսներն ու կարիքները պարզելու և արդյունաբերության գլխավոր ճյուղերի զարգացման ուղղությունը որոշելու համար, որն իրականում նշանակում էր միջամտություն այդ երկրների ներքին գործերին: ՍՍՀՄ և ժող. դեմոկրատիայի երկրները հրաժարվեցին մասնակցել «Մ. պ.»-ին: Հուլիսին 16 կապիտալիստական երկրներ (Անգլիա, Ֆրանսիա, Իտալիա, Բելգիա, Նիդերլանդներ, Լյուքսեմբուրգ, Շվեդիա, Նորվեգիա, Դանիա, Իռլանդիա, Իսլանդիա, Պորտուգալիա, Ավստրիա, Շվեյցարիա, Հունաստան, Թուրքիա) կնքեցին համաձայնագիր եվրոպական տնտ. համագործակցության կազմակերպություն (նախապես՝ կոմիտե) ստեղծելու վերաբերյալ, որը պետք է մշակեր «Եվրոպայի վերականգնման ծրագիր»: «Մ. պ.» ուժի մեջ մտավ 1948-ի ապրիլին, երբ ԱՄՆ-ում ընդունվեց «օտարերկրյա պետություններին օգնելու» քառամյա ծրագիրը. կնքվեցին երկկողմանի համաձայնագրեր, որոնցով Մ. պ-ի մասնակիցները պարտավորվում էին նպաստել «ազատ ձեռնարկությանը», խրախուսել ամերիկյան մասնավոր ներդրումները, իջեցնել մաքսերը ևն: Օգնությունը տրվում էր ԱՄՆ-ի ֆեդերալ բյուջեից՝ անհատույց վարկերի և փոխառությունների ձևով, որը 1948—1951-ին կազմեց 17 մլրդ դոլլար (60%-ը ստացան Անգլիան, Ֆրանսիան, Իտալիան և ԳՖՀ): 1951-ի դեկտ. 30-ին պաշտոնապես դադարեց «Մ. պ.»-ի գործողությունը և այն փոխարինվեց «անվտանգության փոխադարձ ապահովման» օրենքով (կոնգրեսն ընդունեց 1951-ի հոկտ. 10-ին), որը նախատեսում էր ռազմ. և տնտ. օգնություն:

*Գրկ.* Иноземцев Н. Н., Внешняя политика США в эпоху империализма, М., 1960; Аллен Д., План Маршалла. План восстановления или военный план?, пер. с англ., М., 1949; Price H. B., The Marshall Plan and ist [Meaning, [N. Y., 1955].

**ՄԱՐՇԱԼՅԱՆ ԿՂԶԻՆԵՐ** (Marshall Islands), արշիպելագ Խաղաղ օվկիանոսում, Միկրոնեզիայում: ՄԱԿ-ի խնամարկյալ տերիտորիաների մի մասն է ԱՄՆ-ի կառավարման ներքո: Բաղկացած է մի քանի հարյուր կորալային ոչ մեծ կղզիներից, ատոլներից ու խութերից, որոնք կազմում են երկու խումբ. Ռադակը՝ արլ-ում և Ռալիկը՝ արմ-ում: Տարածությունը 181 *կմ²* է, մոտ 18,2 հզ. բն. (1978): Վարչական կենտրոնը Մաջուրո կղզում է: Կլիման արևադարձային, մերձհասարակածային է, տարեկան տեղումները՝ 2000—4000 *մմ*: Զբաղվում են կոկոսյան արմավենու, հացի ծառի, բատատի մշակությամբ, ձկնորսությամբ: Արտահանում են կոկոսյան ընկույզի միջուկ: Մ. կ. հայտնագործել է իսպանացի Ա. Սաավեդրան 1529-ին:

**ՄԱՐՇԱԿ** Սամուիլ Յակովլևիչ [22.10(3.11) 1887, Վորոնեժ —4.7.1964, Մոսկվա], ռուս սովետական բանաստեղծ: 1912—14-ին եղել է Լոնդոնի համալսարանի արվեստի ֆակուլտետի ունկնդիր: 1915—17-ին ռուս. հանդեսներում տպագրվել են Մ-ի առաջին թարգմանությունները անգլ. պոեզիայից: 1920-ին Կրասնոդարում կազմակերպել է երկրի առաջին մանկական թատրոններից մեկը, նրա համար գրել հեքիաթ-պիեսներ: 1923-ին լույս են տեսել բանաստեղծական առաջին ժողովածուները ամենափոքրիկների համար. «Այն տունը, որ մի օր շինեց Ջեկոն» (հայ. հրտ. 1946), «Անխելք մկնիկի հեքիաթը» ևն: 1923—25-ին Մ. ղեկավարել է «Նովի Ռոբինզոն» («Новый Робинзон») հանդեսը: Երկար տարիներ եղել է Մանկհրատի լենինգրադյան խմբագրության ղեկավարը: Մ. երեխաների հետ խոսում է հասկանալի, զրավիչ և կենդանի լեզվով, մանկական խաղի ձևով: Այս առանձնահատկությունները բնորոշ են նրա ինչպես վաղ («Միստր Թվիստր», 1933, հայ. հրտ. 1935 ևն), այնպես էլ պատերազմական ու ետպատերազմյան շրջանի («Զինվորական փոստը», 1944, հայ. հրտ. 1947, «Կլոր տարին», 1948 ևն) գործերի համար: Մ. ռուս պոեզիան հարստացրել է Ու. Շեքսպիրի, Ռ. Բյոռնսի, Ռ. Կիպլինգի, Հ. Թումանյանի և ուրիշների գործերի թարգմանություններով: Հայտնի է նաև «Ընտիր լիրիկա» (1962, լենինյան մրցանակ, 1963) գրքով: Մ. արձակագիր է, գրաքննադատ: Նրա գործերը թարգմանված են ՍՍՀՄ և աշխարհի շատ ժողովուրդների լեզուներով: ՍՍՀՄ պետ. մրցանակներ (1942, 1946, 1949, 1951): Պարգևատրվել է Լենինի 2 և այլ շքանշաններով:

*Երկ.* Собр. соч., т. 1—8, М., 1968—72; Մանուկներին, Ե., 1953:

**ՄԱՐՇԵ** (Marchais) Ժորժ (ծն. 7. 6. 1920, Ֆալեզ, Կալվադոս դեպարտամենտում), ֆրանսիական և միջազգային բանվորական շարժման գործիչ: Ծնվել է բանվորի ընտանիքում: Աշխատել է խառատ: 1942-ին հարկադիր աշխատանքի է եղել ֆաշիստական Գերմանիայում: Պատերազմից հետո աշխատել է ավիացիոն արդյունաբերության ձեռնարկություններում, եղել է արհմիութենական ակտիվիստ: Ֆրանսիայի



Ժ. Մարշե

կոմունիստական կուսակցության (ՖԿԿ) անդամ 1947-ից: 1954—61-ին՝ ՖԿԿ Սեն Սյուդի (Սենի դեպարտամենտ, Փարիզի շրջանում) ֆեդերացիայի քարտուղար: 1956-ին ընտրվել է ՖԿԿ ԿԿ անդամության թեկնածու, 1959-ին՝ անդամ և ՖԿԿ ԿԿ քաղբյուրոյի անդամության թեկնածու, 1961-ից՝ անդամ և ՖԿԿ ԿԿ քարտուղար: ՖԿԿ XIX համագումարում (1970) ընտրվել է կուսակցության գլխավոր քարտուղարի տեղակալ, XX-ում (1972)՝ գլխավոր քարտուղար: Մ. 1973-ից Ֆրանսիայի Ազգային ժողովի դեպուտատ է: Մասնակցել է կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությանը (Մոսկվա, 1969): Բազմիցս այցելել է Սովետական Միություն: Գրել է «Դեմոկրատական մրցահրավեր» (1973) գիրքը:

**ՄԱՐՈ** (Marot) Կլեման (1496—1544), ֆրանսիացի բանաստեղծ, ֆրանսիական Վաղ Վերածննդի առավել ականավոր դեմքերից: Հաջողություն է ունեցել որպես պալատական բանաստեղծ: Մ-ի պալատական բանաստեղծությունները արտակարգ թեթև են ու նրբագեղ՝ իր ժամանակի համար [«Վանահայրն ու իր ծառան», «Ինքն իր մասին», «Եղերերգ» (1515—38)]: Նրա գրական ժառանգության մեջ գլխավորը ուղերձներն են, որոնք բազմազան են ժանրային երանգներով: Եղել է խոշոր երգիծաբան («Դժոխք», պոեմ, 1526): Մ. անցյալի բանաստեղծական ավանդույթները միահյուսել է հումանիստական մշակույթի նորագույն ձեռքբերումների հետ: Սաղմոսների նրա թարգմանությունները կարևոր դեր են խաղացել ֆրանս. ներբողների հետագա ծաղկումը նախապատրաստելու գործում:

**ՄԱՐՈԿԿԱՑԻՆԵՐ**, ազգ, *Մարոկկոյի* հիմնական բնակչությունը (18,7 մլն, 1978): Մեծամասնությունը խոսում է արաբ. լեզվի մարոկկոյական, որոշ մասը՝ նաև բերբերական լեզվի բարբառներով: Հավատացյալները սուննի ուղղության մահմեդականներ են: Մ-ի էթնիկական ընդհանրությունը ձևավորվել է բնիկ բերբերների և Հյուսիս-Արևմտյան Աֆրիկա թափանցած (սկսած VII դ.) արաբների միաձուլման հետևանքով: Մ-ի ազգային համախմբմանը նպաստել է ազգային-ազատագրական պայքարը ընդդեմ ֆրանս. և իսպանական գաղութարարների (1912—56):



**ՄԱՐՈԿԿՈ**, Մարոկկոյի Թագավորություն (արաբ. Ալ Մամլյաքա ալ Մաղրիբիյա կամ Մաղրիբ ալ Աքսա, բառացի՝ Հեռավոր Արևմուտք)

Բովանդակություն



## I. Ընդհանուր տեղեկություններ

Մ. պետություն է Հյուսիս-Արևմտյան Աֆրիկայում: Ողողվում է Ատլանտյան օվկիանոսի և Միջերկրական ծովի ջրերով: Եվրոպայից բաժանվում է Ջիբրալթարի նեղուցով: Սահմանակից է Ալժիրին և Արևմտյան Սահարային: Տարածությունը 446,5 հզ. *կմ²* է, բնակչությունը՝ 18,9 մլն (1978): Մայրաքաղաքը՝ Ռաբաթ: Վարչականորեն բաժանվում է 37 պրովինցիայի և 2 պրեֆեկտուրայի:

## II. Պետական կարգը

Մ. սահմանադրական միապետություն է: Գործող սահմանադրությունն ընդունվել է 1972-ին: Պետության և կառավարության գլուխը թագավորն է (իշխանությունն ստանձնում է ժառանգաբար), որը նշանակում է և ազատում է կառավարության անդամներին, հրապարակում օրենքի ուժ ունեցող հրամանագրեր, կնքում և հաստատում միջազգային պայմանագրեր, նշանակում դատավորներին, հայտարարում պատերազմ, արտակարգ դրություն ևն: Օրենսդրական իշխանության բարձրագույն մարմինը միապալատ պառլամենտն է: Ընտրական իրավունքից օգտվում են 21 տարին լրացրած բոլոր քաղաքացիները: Պրովինցիաները կառավարում են նահանգապետները, պրեֆեկտուրաները՝ մերերը, համայնքները՝ կաիդները: Դատական համակարգը կազմում են գերագույն դատարանը (իրականացնում է նաև սահմանադրական հսկողությունը), ապելյացիոն և, այսպես կոչված, սադադի դատարանները կամ հաշտարար տրիբունալները (ստորին ատյանի դատարաններ):

Վարչական բաժանումը (1972)*

| Վարչական միավորը | Տարածությունը, հզ. *կմ²* | Բնակչությունը, հզ. մարդ (1971) | Վարչական կենտրոնը |
|---|---|---|---|
| Պրովինցիաներ | | | |
| Ագադիր | 53,0 | 1168,0 | Ագադիր |
| Բենի Մելալ | 14,1 | 663,7 | Բենի Մելալ |
| Էլ Հոսեյմա | 3,5 | 246,6 | Էլ Հոսեյմա |
| Էլ Ջադիդա | 6,0 | 590,9 | Էլ Ջադիդա |
| Խուրիբգա | 4,3 | 328,3 | Խուրիբգա |
| Կենիթրա | 19,8 | 1346,0 | Կենիթրա |
| Մառակեշ | 27,9 | 1558,5 | Մառակեշ |
| Մեկնես | 13,5 | 753,1 | Մեկնես |
| Նադոր | 6,1 | 480,5 | Նադոր |
| Սաֆի | 13,6 | 897,9 | Սաֆի |
| Սեթաթ | 12,1 | 670,8 | Սեթաթ |
| Վարզազաթ | 55,7 | 522,4 | Վարզազաթ |
| Թազա | 22,5 | 578,6 | Թազա |
| Թեթուան | 10,0 | 796,3 | Թեթուան |
| Տանժեր | 0,4 | 215,5 | Տանժեր |
| Թարֆայա | 34,2 | 24,2 | Թարֆայա |
| Ուջդա | 42,4 | 633,8 | Ուջդա |
| Քսար էս Սուկ | 0,1 | 471,6 | Քսար էս Սուկ |
| Ֆես | 17,9 | 1071,4 | Ֆես |
| Պրեֆեկտուրաներ | | | |
| Կասաբլանկա | 1,2 | 1719,4 | |
| Ռաբաթ Սալե | 0,5 | 641,7 | |

* 1981-ին Մ. վարչականորեն բաժանված է 37 պրովինցիայի և 2 պրեֆեկտուրայի:

## III. Բնությունը

Մ. լեռնային երկիր է: Գերակշռում են միջին բարձրության և բարձր լեռները, սարավանդները (մեսետաներ) ու բարձրադիր հարթավայրերը: Հվ-արմ-ից հս-արլ. ձգվում է Ատլասի լեռնային համակարգը՝ Բարձր Ատլասը (բարձրությունը՝ 4165 *մ*, Թուբկալ լեռ, Մ-ի ամենաբարձր կետը), Միջին Ատլասը, Անտիատլասը, հս-ում, Միջերկրական ծովի երկայնքով՝ Էր Ռիֆ լեռները, Ատլանտյան ափին՝ Գարբ, Աբդա, Սուս դաշտավայրերը, հս-արմ-ում՝ Մարոկկոյական Մեսետայի հարթավայրերն ու սարավանդները: Հս-արլ-ում խոշոր շոթերի գոգավորություններով Ալժիրա-Մարոկկոյական Մեսետան է (1100—1200 *մ*): Ատլասից հվ. տարածված քարքարոտ սարավանդները Սահարայում փոխարկվում են քարքարոտ հարթավայրերի:

**Երկրաբանական կառուցվածքը։** Մ. բաժանվում է մինչքեմբրյան հիմքով Անտիատլասի լեռների, հերցինյան ծալքավորության Ատլասի և ալպյան ծալքավորության Էր Ռիֆ լեռների լայնական զոնաների: Մ-ի տարածքին բնորոշ է սեյսմիկությունը, հաճախակի են ավերիչ երկրաշարժերը: Կան ֆոսֆորիտների, քարաղի, պղնձի, ցինկի, կապարի, երկաթի, կոբալտի, քարածխի, նավթի և գազի հանքավայրեր:

**Կլիման։** Մ-ի մեծ մասն ունի մերձարևադարձային, հս-ում՝ միջերկրածովյան կլիմա (հուլիսի միջին ջերմաստիճանը՝ 24—28°C, հունվարինը՝ 10—12°C): Ատլանտյան օվկիանոսին հարող շրջաններում կլիման ավելի մեղմ է, երկրի հվ-ում և հվ-արլ-ում՝ չորային: Տարեկան տեղումները ափամերձ շրջաններում և լեռներում





Ժայռեր Կասպիայում



Ջրավազան Թիզնիթում

մոտ 1000 *մմ* են, հվ-ում՝ մինչև 200 *մմ*, Սահարային հարող շրջաններում՝ մոտ 100 *մմ*: Երկրի հվ. շրջաններում հաճախակի են ավազային փոթորիկները:

**Ներքին ջրերը:** Մշտահոս գետերը քիչ են: Խոշոր գետերն են Մուլույան, Սեբուն, Ումմ էր Ռբիան, Թենսիֆթը, որոնց բնորոշ են աշնան ու ձմռան անձրևային վարարումները: Ումմ էր Ռբիա և Սեբու գետերի վրա կառուցված են խոշոր ջրամբարներ ու ՀԷԿ-եր: Լճերի մեծ մասը աղի է: Արլ-ում տարածված են ցամաքող, աղի լըճերը (սեբխեր), Ատլանտյան օվկիանոսի ափերին՝ ճահճացած ծովալճակները (մերժեր):

**Հողերը, բուսական և կենդանական աշխարհը:** Ափամերձ հարթավայրերում և միջլեռնային հովիտներում տարածված են ավազային, կավավազային ու կավային առավել բերրի սևահողերը: Լեռներում գերակշռում են լեռնաանտառային գորշ, ծայր հվ-ում՝ անապատային հողերը: Անտառները զբաղվում են երկրի տարածության 12%-ը և պահպանվել են լեռներում ու երկրի հս-արմ-ում: Հիմնական ծառատեսակներն են կաղնին, խցանակաղնին, մայրին, գաճաճ արմավենին, սոճին: Մեծ տարածում ունեն մակվիսի ու կենսածառի թփուտները: Չոր տափաստանները և կիսաանապատները ծածկված են ալֆա խոտով, աղուտները՝ օշանով:

Կենդանական աշխարհը խիստ տուժել է մարդու տնտ. գործունեության հետևանքով և համեմատաբար աղքատ է: Կան նապաստակ, վարազ, շնագայլ, կապիկ, բորենի, հովազ, լուսան ևն, լեռնային գետերում՝ կարմրախայտ: Տարածված են կրծողները, սողունները, երկկենցաղները: Առափնյա ջրերը հարուստ են ձկներով: Բուսական և կենդանական աշխարհի պահպանման նըպատակով ստեղծվել են արգելանոցներ, ազգային պարկեր (Թուբկալ, Թազեկա):

**IV. Բնակչությունը**

Մոտ 99%-ը բերբերա-արաբական ծագման *մարոկկացիներ են:* Կան նաև եվրոպացիներ (ֆրանսիացիներ, իսպանացիներ) և մարոկկոյական հրեաներ: Պետական լեզուն արաբերենն է, կրոնը՝ մահմեդականությունը, տոմարը՝ լուսնային հիջրան: Միջին խտությունը 1 *կմ*²-ի վրա մոտ 40 մարդ է (1978), քաղաքային բնակչությունը՝ 35% (1978): Խոշոր քաղաքներն են Կասաբլանկան, Ռաբաթը, Մառակեշը, Ֆեսը:

**V. Պատմական ակնարկ**

Հնագույն ժամանակներից Մ-ի տարածքում բնակվել են լիբիական կամ հին բերբերական (ժամանակակից բերբերների նախնիները) ցեղեր: Մ. թ. ա. II հազարամյակի վերջին առափնյա շրջաններում հիմնըվել են փյունիկեցիների գաղութներ, որոնք այնուհետև ընկել են *Կարթագենի* իշխանության տակ: Մ. թ. ա. II դ. Մ-ի հս. շրջաններն իր ազդեցությանն է ենթարկել, իսկ մ. թ. ա. 27-ին նվաճել Հռոմը: V դ. Մ-ի տարածքի հս. մասը նվաճել են վանդալները, VI դ.՝ Բյուզանդիան, VIII դ.՝ արաբները (որոնք տարածեցին արաբերենն ու մահմեդականությունը): 788-ին Մ-ի հս-արմ-ում հիմնվել է Իդրիսյանների պետությունը (առաջին պետությունը Մ-ի տարածքում՝ տեղական արաբ. դինաստիայի գլխավորությամբ), XI դ.՝ *Ալմորավյանների* (Մառակեշ կենտրոնով, որից առաջացել է երկրի ժամանակակից անվանումը), ապա՝ *Ալմոհադների* խալիֆայությունը: XIII դ. 2-րդ կեսին Մ-ում իշխանությունն անցել է Մարինյանների բերբերական դինաստիային, որոնց տիրապետության ժամանակ նկատելիորեն զարգացել է գյուղատնտեսությունը, տնտ. լայն կապեր են հաստատվել Մ-ի և Եվրոպայի ու Արևմտյան Աֆրիկայի միջև, ծաղկել է ֆեոդալական մշակույթը: XV դ. սկսվել է եվրոպացիների մուտքը Մ., պորտուգալացիները և իսպանացիները գրավել են ատլանտյան ծովափը: XVI դ. վերջին մարոկկացիներին հաջողվել է գաղութարարներին վտարել առափնյա քաղաքների զգալի մասից: Մ-ի սուլթաններ Իսմայիլի (1672—1727) և Սիդի Մուհամմադ բեն Աբդուլլահի (1757—90) ժամանակ ազատագրվել է երկրի ամբողջ առափնյա շրջանը (բացի Սեուտայից և Մելիլյայից): XIX դ. 40-ական թթ. սկսվել է եվրոպացիների զինված ներխուժումը Մ.: 1844-ին Ֆրանսիան, պարտության մատնելով մարոկկացիների բանակը, անիրավահավասար պայմանագիր պարտադրեց Մ-ին: 1859-ին Իսպանիան ներխուժեց Մ.՝ զբաղվելով աննշան տարածք: XX դ. սկզբին Մ-ի համար պայքար սկսեցին նաև Մեծ Բրիտանիան ու Գերմանիան: 1912-ին ստորագրվեցին ֆրանս-մարոկկոյական և ֆրանս-իսպանական պայմանագրերը, որոնցից առաջինով Մ-ում հաստատվում էր ֆրանս. պրոտեկտորատ, երկրորդով Մ-ի մի փոքր մասն անցնում էր Իսպանիայի տիրապետությանը: Մ-ի տարածքը բաժանվեց 3 գոտու՝ ֆրանս. (տարածքի մոտ 80%-ը, բնակչության 90%-ը), իսպանական (մի փոքր տարածք Մ-ի հս-ում և ծայր հվ-ում. վերջինս Իսպանական Հարավային Մ. անունով միացվեց Իսպանական Արևմտյան Սահարային) և միջազգային (Տանժերը): Երկրում իշխանությունն անցավ ֆրանս. գլխավոր ռեզիդենտին (ֆրանս. գոտում) և իսպանական գերագույն կոմիսարին (իսպանական գոտում): Մ-ի սուլթանի և իսպանական գոտում նրա փոխարքայի՝ խալիֆայի, իշխանությունը ձևական էր: Ֆրանսիական պրոտեկտորատի հաստատման դեմ ապստամբեց ժողովուրդը: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ազդեցությամբ Մ-ում նոր վերելք ապրեց ազգային-ազատագրական շարժումը: 1921-ին Ռիֆի (մարզ Մ-ի հս-ում, իսպանական գոտում) ցեղերը Մ-ի ազգային հերոս Աբդ ալ Քերիմի գլխավորությամբ ջախջախեցին իսպանական բանակը և վտարեցին Ռիֆից: Ստեղծվեց *Ռիֆի հանրապետությունը*: 1926-ին Ռիֆի զորքերը պարտվեցին ֆրանս. և իսպանական միացյալ ուժերի դեմ կռվում:

1920-ական թթ. Մ-ի տնտեսության հիմնական ճյուղերում տիրապետում էր օտարերկրյա, գլխավորապես՝ ֆրանս. կապիտալը, մարոկկոյական բուրժուազիայի բաժինն աննշան էր (ակցիաների 5%-ից ոչ ավելին): Ավելի քան 1 մլն *հա* բարեբեր հողեր բռնագրավվեցին բնիկներից և ի սեփականություն տրվեցին եվրոպական գաղութարարներին: Երկրի բնակչության և բնական հարստությունների անխնա շահագործումը խորացնում էր դասակարգային շերտավորումը, միաժամանակ արագացնում քաղաքների զարգացումը, քաղաքային միջին խավերի ու բանվոր դասակարգի ձևավորումը:

1930-ական թթ. քաղաքներում ուժեղացավ հակագաղութային, հակաիմպերիալիստական շարժումը: Ազգային-ազատագրական շարժման ղեկավարությունը ցեղային կամ ֆեոդալական առաջնորդներից անցավ Մ-ի ազգային բուրժուազիային և մտավորականությանը: 1934-ին Մ-ի բուրժուա-ազգայնականները և հայրենասեր մտավորականության ներկայացուցիչները ստեղծեցին Ազգային գործողության մարոկկոյական դաշինք (Գործողության կոմիտե), որը պահանջում էր մարոկկացիների մասնակցությունը երկրի կառավարմանը: 1937-ին կոմիտեն արգելվեց, որից հետո ստեղծվեցին ընդհատակյա կազմակերպություններ [հիշատակելի է «Ազգային կուսակցությունը», որի հիմքի վրա 1943-ին ստեղծվեց «Իստիքլյալ» («Անկախություն») կուսակցությունը]:

Երկրորդ համաշխարհային պատերազմի (1939—45) ժամանակ Մ-ի ֆրանս. գոտին գտնվում էր «Վիշիի կառավարության» իշխանության տակ: 1940-ին Իսպանիան զավթեց Տանժերը և ներառեց իսպանական գոտու մեջ: 1942-ի նոյեմբերին

անգլո-ամերիկյան դաշնակցային զորքերը մտան Մ.: Մ-ի ֆրանս. գոտում ստեղծվեցին ռազմ. բազաներ: Պատերազմի տարիներին երկրի անկախություն տալու պահանջով հանդես էին գալիս 1943-ին ստեղծված Մ-ի կոմկուսը (ՄԿԿ, արգելվել է 1959-ին), «Իստիքլյալ» կուսակցությունը ինչպես նաև 1927-ից սուլթան Սիդի Մուհամմադ բեն Յուսուֆը: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո էլ ֆրանս. գաղութային վարչակարգը պահպանվում էր անփոփոխ: 1945-ին Տանժերում վերականգնվեց միջազգային ռեժիմը: Մ-ում նոր թափ ստացավ ազգային-ազատագրական շարժումը, որտեղ կարևոր դեր էր խաղում բանվոր դասակարգը: 1950-ին Մ-ի սուլթանը Ֆրանսիային հուշագրեր ներկայացրեց՝ Մ-ին լրիվ ինքնուրույնություն տալու պահանջով, որը, սակայն, մերժվեց: 1952-ին Մ-ի քաղաքներում տեղի ունեցան հակագաղութային զանգվածային ելույթներ և ընդհարումներ զորքերի հետ: 1953-ի օգոստոսին ֆրանսիացիները գահընկեց արեցին և երկրից արտաքսեցին սուլթանին: Երկրում ծավալվեց զինված դիմադրություն: Սովետական Միությունը և աշխարհի այլ առաջադեմ ուժեր աջակցում էին Մ-ի ժողովրդի ազատագրական պայքարին: Ֆրանս. իշխանությունները հարկադրված 1955-ի նոյեմբերին վերադարձրին սուլթանին: 1956-ի մարտի 2-ին Մ. հռչակվեց անկախ: 1956-ի ապրիլին վերացվեց պրոտեկտորատը իսպանական գոտում, հոկտ. 29-ին՝ Տանժերի միջազգային ռեժիմը (1957-ի հունվ. 1-ից Տանժերը մտավ Մ-ի կազմի մեջ): 1956-ի նոյեմբերին Մ. ընդունվեց ՄԱԿ:

Անկախության նվաճումից հետո թագավոր (1957-ից) Մուհամմադ V (նույն Սիդի Մուհամմադ բեն Յուսուֆը) հռչակեց երկրի ազգային վերածննդի, ազգային տնտեսություն ստեղծելու և օտարերկրյա կապիտալիստական տերություններից տնտ. ու քաղ. կախվածությունից ազատվելու կուրս: Մինչև 1961-ի նոյեմբերը ամբողջովին դուրս բերվեցին ֆրանս. զորքերը, վերացվեցին ֆրանս. և ամերիկյան ռազմ. բազաները: Արտաքին ասպարեզում Մուհամմադ V-ի կառավարությունը վարում էր չեզոքության քաղաքականություն, աջակցում Ալժիրի ազատագրական շարժմանը: Մուհամմադ V-ի մահից (1961) հետո գահ բարձրացավ որդին՝ Հասան II: 1962-ին ընդունվեց Մ-ի առաջին սահմանադրությունը, 1963-ի մայիսին կայացան առաջին պառլամենտական ընտրությունները: 1960-ական թթ. ժող. զանգվածների դրության վատթարացումը սրեց սոցիալական հակասությունները, տեղի ունեցան գործադուլներ, հաճախակի փոխվում էին կառավարությունները: 1970-ական թթ. կառավարությունը ձեռնարկեց երկրի ներքին դրությունը կայունացնելու մի շարք միջոցառումներ: 1972-ի մարտին ընդունվեց նոր սահմանադրություն, որն ընդլայնեց պառլամենտի ու կառավարության իրավունքները: 1975-ին Մադրիդում կնքվեց իսպանա-մարոկկո-մավրիտանական համաձայնագիր՝ Արևմտյան Սահարան Մ-ին և Մավրիտանիային հանձնելու վերաբերյալ, որի հիման վրա Մ-ի և Մավրիտանիայի զորքերը մտան Արևմտյան Սահարա: Նրանց դեմ մարտական գործողություններ ծավալեցին Արևմտյան Սահարայի ազատագրական ճակատի (ՊՈԼԻՍԱՐԻՈ) ուժերը: Ալժիրը ճանաչեց 1976-ին հռչակված Սահարայի արաբ. դեմոկրատական հանրապետությունը, որի պատճառով Մ. խզեց դիվանագիտական հարաբերություններն Ալժիրի հետ: 1977-ի փետրվարին Մ. դադարեցրեց իր գործունեությունը Աֆրիկյան միասնության կազմակերպությունում (որի հիմնադիրներից էր):

ՍՍՀՄ-ի և Մ-ի միջև դիվանագիտական հարաբերություններ հաստատվել են 1958-ին. 1958—78-ին կնքվել են տնտ., տեխ., գիտական համագործակցության և առևտրական համաձայնագրեր:

**VI. Քաղաքական կուսակցությունները և արհմիությունները**

«Իստիքլյալ» («Անկախություն»), հիմնվել է 1943-ին, առավել ազդեցիկ բուրժ. կուսակցություն է: Ժողովրդական ուժերի ազգային միություն (ԺՈՒԱՄ), ստեղծվել է 1959-ին, Իստիքլյալից անջատված ձախթևականների կողմից: Ժողովրդական ուժերի սոցիալիստական միություն (ԺՈՒՍՄ), ստեղծվել է 1974-ին: Անկախների ազգային միավորում (ԱԱՄ), հիմնվել է 1978-ին, պրոկառավարական կուսակցություն է:

Առաջադիմության և սոցիալիզմի կուսակցություն (ԱՍԿ), հիմնվել է 1974-ին:

Աշխատանքի մարոկկոյական միություն (ԱՄՄ), ստեղծվել է 1955-ին, ունի ավելի քան 300 հզ. անդամ (1978), համագործակցում է ԺՈՒԱՄ-ի հետ:

Մարոկկոյական աշխատավորների համընդհանուր միություն, հիմնվել է 1960-ին, ունի մոտ 100 հզ. անդամ, գործում է Իստիքլյալի վերահսկողության ներքո: Աշխատանքի դեմոկրատական կոնֆեդերացիա, ստեղծել են ԱՄՄ-ից անջատված գործիչները՝ 1978-ին: Գտնվում է ԺՈՒՍՄ-ի ազդեցության ներքո:

**VII. Տնտեսա-աշխարհագրական ակնարկ**

Մ. ագրարային երկիր է՝ համեմատաբար զարգացած լեռնահանքային արդյունաբերությամբ: Ազգային համախառն արտադրանքի ընդհանուր արժեքի (18,0 մլրդ դիրհամ, 1977) 2/5-ը բաժին է ընկնում գյուղատնտեսությանն ու լեռնահանքային արդյունաբերությանը: Բարձրապրանքային գյուղատնտ. ֆերմաների և ժամանակակից արդ. ձեռնարկությունների կողքին մեծ տեղ են գրավում մանրապրանքային գյուղատնտեսությունը և տնայնագործական մանր ձեռնարկությունները: Երկրի բնակչության մեծ մասն զբաղված է տնտեսության ավանդական սեկտորում: Զարգանում է պետ. սեկտորը:

**Գյուղատնտեսությունը** տնտեսության հիմնական ճյուղն է: Ցանքատարածությունների մեծ մասը զբաղեցնում է հացահատիկը: Մշակում են նաև կարտոֆիլ, շաքարի ճակնդեղ, լոլիկ, բամբակ, խաղող: Կան ցիտրուսայինների և ձիթենու ընդարձակ պլանտացիաներ: Անասնապահությունը հետամնաց է, էքստենսիվ: 1978-ին Մ-ում կար 2,91 մլն գլուխ խոշոր, 21,3 մլն գլուխ մանր եղջերավոր անասուն: Կա ձկնորսություն (286 հզ. *տ*, 1978):

**Արդյունաբերությանը** բաժին է ընկնում երկրի ազգային եկամտի 30%-ը: Զարգացած է լեռնահանքային արդյունաբերությունը, հատկապես՝ ֆոսֆորիտների (19,3 մլն *տ*, 1978, հանույթով 2-րդ տեղը կապիտալիստական աշխարհում), նաև երկաթի, մանգանի, կապարի, ցինկի, կոբալտի, նավթի, գազի արդյունահանումը: 1978-ին արտադրվել է 3737 մլն *կվտ·ժ* էլեկտրաէներգիա: Կարևոր դեր ունի մշակող արդյունաբերությունը, որը ներկայացված է սննդի, տեքստիլ, քիմ., նավթամշակման, մետաղամշակման և այլ ձեռնարկություններով: Սննդի արդյունաբերության առաջատար ճյուղերն են ձկան (1-ին տեղը աշխարհում սարդինների պահածոների արտադրությամբ), մրգի և բանջարեղենի պահածոների, մրգահյութի, շաքարի, ալյուրի արտադրությունը:

**Տրանսպորտը**: Երկաթուղիների երկարությունը 1770 *կմ* է, ավտոճանապարհներինը՝ 27,7 հզ. *կմ* (1978): Արտաքին առևտրի մեծ մասը կատարվում է ծովային նավատորմով: Գլխավոր նավահանգիստներն են Կասաբլանկան (որին բաժին է ընկնում արտաքին փոխադրումների 80%-ը), Սաֆին, Մոհամեդիան, Տանժերը: Կան օդանավակայաններ:

**Արտաքին առևտուրը**: 1978-ին Մ-ի արտահանումը կազմել է 6261 մլն դիրհամ, ներմուծումը՝ 12361 մլն դիրհամ: Արտահանում է ֆոսֆորիտներ, պահածոներ, ցիտրուսներ, գինի, ֆոսֆորական թթու, գորգեր, խցանի հումք ևն, ներմուծում՝ արդ. և գյուղատնտ. սարքավորում, հում նավթ, թեյ, սուրճ, ցորեն, սև և գունավոր մետաղների գլոցվածք ևն: Առևտրական հիմնական գործընկերներն են Ֆրանսիան (որին բաժին է ընկնում արտաքին առևտրի 1/4-ը), ԳՖՀ, Իսպանիան, Իտալիան, ԱՄՆ, Մեծ Բրիտանիան: Տնտ. և առևտրական կապերի մեջ է նաև ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների հետ: ՍՍՀՄ-ի օգնությամբ կառուցվել են արդ. օբյեկտներ, հետախուզվում են օգտակար հանածոները: Տնտեսության համար կարևոր նշանակություն ունի տուրիզմը, որի հիմնական կենտրոններն են Ագադիրը, Ֆեսը, Մառակեշը, Տանժերը, Թեթուանը:

Դրամական միավորը դիրհամն է: 100 դիրհամը = 15 ռ. 79 կ. (1981):

**VIII. Զինված ուժերը**

Մ-ի զինված ուժերը (ավելի քան 100 հզ. մարդ, 1977) կազմված են ցամաքային զորքերից, ռազմաօդային և ռազմածովային ուժերից: Գերագույն գլխավոր հրամանատարը թագավորն է: Ընդհանուր ղեկավարությունն իրականացնում են պաշտպանության գերագույն խորհուրդը և գլխավոր շտաբը: Համալրվում են վարձու կամավորներով: Ցամաքային զորքերը (75 հզ. մարդ) կազմված են հետևակային 18, մոտոհետևակային 2, տանկային 5 գումարտակներից ևն: Ռազմաօդային ուժերը (5650 մարդ) ունեն մարտական 59 ինքնաթիռ, ռազմածովային ուժերը (4 հզ. մարդ)՝ տարբեր նշանակության 15 նավ, ծովային հետևակի 1 գումարտակ: Կան

նաև ռազմականացված կազմակերպություններ (30 հզ. մարդ), այդ թվում՝ ժանդարմերիա (11 հզ. մարդ), ոստիկանություն (շուրջ 20 հզ. մարդ):

**IX. Բժշկա-աշխարհագրական բնութագիրը**

1975-ին Մ-ում ծնունդը կազմել է 1000 բնակչին 46,2 մահացությունը՝ 15,7 մանկական մահացությունը 1000 ողջ ծնվածին՝ 149: Առողջապահության հիմնական խնդիրը պայքարն է վարակիչ և մակաբուծական հիվանդությունների դեմ: Տարածված են տրախոման, կարմրուկը, դիզենտերիան, տիֆերը և պարատիֆերը, վեներական հիվանդությունները, դիֆթերիան, բորը, մալարիան ևն: 1975-ին գործել է 133 հիվանդանոցային հիմնարկ՝ 23,1 հզ. մահճակալով (1000 բնակչին՝ 1,3 մահճակալ), աշխատել 1,3 հզ. բժիշկ (10 հզ. բնակչին՝ 0,7 բժիշկ), 128 ատամնաբույժ, 500 դեղագործ և 10,9 հզ. միջին և օժանդակ բուժաշխատող: Բժիշկներ են պատրաստում Ռաբաթի և Կասաբլանկայի համալսարանների բժշկ. ֆակուլտետները: 1963-ին գործել է միջին բուժանձնակազմի պատրաստման 30 դպրոց 1972-ին առողջապահության ծախսերը կազմել են պետ. բյուջեի 4,9%-ը:

**X. Լուսավորությունը և գիտական հիմնարկները**

Մինչև Ֆրանսիայի կողմից երկրի նվաճումը Մ-ում գործել են մահմեդական դպրոցներ: Ֆրանս. տիրապետության շրջանում ստեղծվել են 2 տիպի պետ. աշխարհիկ դպրոցներ՝ ֆրանսիացիների և բընիկների երեխաների համար (ուսուցումը՝ ֆրանս.): Պարտադիր կրթության մասին առաջին օրենքն ընդունվել է 1963-ին: Ժողկրթության ժամանակակից համակարգի մեջ մտնում են 5-ամյա տարրական և 6-ամյա միջնակարգ դպրոցները (հիմնականում՝ պետ., ուսուցումը՝ ֆրանս. և արաբ.): Պրոֆտեխնիկական կրթություն են տալիս միջնակարգ դպրոցի տեխ. բաժանմունքները: Տարրական դպրոցի ուսուցիչներ են պատրաստում ուսուցչական դպրոցները, միջնակարգի՝ Բարձրագույն նորմալ դպրոցը և համալսարանները:

Մ-ի բարձրագույն ուս. հաստատություններն են՝ Մուհամմադ V-ի անվ. համալսարանը (հիմնադրվել է 1957-ին), վարչական, ինժեներական դպրոցները (բոլորն էլ՝ Ռաբաթում), Կարաուին մահմեդական համալսարանը Ֆեսում (առաջինը Աֆրիկայում, 859): Ռաբաթի պետ. արխիվին կից գործում է Մ-ի խոշորագույն գրադարանը (1920, 208 հզ. գիրք): Կան հնագիտության թանգարաններ (Ռաբաթում և Թեթուանում), զինաթանգարան (Ֆեսում) ևն:

Գիտական հիմնարկներից են Շերիֆյան գիտական ինստ-ը (հիմնվել է 1920-ին, Ռաբաթ), Ագրոնոմիական հետազոտությունների ազգային ինստ-ը (1924), Մուհամմադ V-ի անվ. համալսարանին կից գործող գիտական հետազոտությունների կենտրոնը (1962), Արաբ. երկրների լիգային կից Արաբականացման բյուրոն: Կան մի շարք գիտական ընկերություններ (աշխարհագրական, ֆիզիկայի ևն): Մ-ում զտնվում են նաև արտասահմանյան որոշ ԳՀԻ-ների և ծառայությունների մասնաճյուղեր (ֆիզիկայի ֆրանս. ինստ-ի, Պաստյորի ինստ-ի ևն):

**XI. Մամուլը, ռադիոհաղորդումները, հեռուստատեսությունը**

Լույս են տեսնում 20-ից ավելի պարբերական հրատարակություններ: Հիմնականներն են՝ «Ալ-Անբա» (1963-ից, արաբ.), «Մատեն» («Le Matin», 1971-ից, ֆրանս.), «Մարոկ Սուար» («Maroc Soir», 1971-ից, ֆրանս.), «Ալ-Ալյամ» (1946-ից, արաբ.), «Օպինիոն» («L'Opinion», 1965-ից, ֆրանս.), «Մագրեբ էնֆորմասիոն» («Maghreb Informations», ֆրանս.), «Ալ-Բայան» (1972-ից, արաբ. և ֆրանս.): Մագրիբ Արաբ Պրես (ՄԱՊ) պաշտոնական ինֆորմացիոն գործակալությունը հիմնվել է 1959-ին, Ռադիոհաղորդումների և հեռուստատեսության կառավարական ծառայությունը՝ 1962-ին: Ռադիոհաղորդումները տրվում են արաբ., անգլ., ֆրանս., իսպաներեն, բերբերերեն, հեռուստահաղորդումները՝ արաբ. և ֆրանս.:

**XII. Գրականությունը**

Գոյություն ունի արաբ., բերբերերեն և ֆրանս. լեզուներով: Մ-ի՝ դասական շրջանի արաբ. գրականության մեջ ներկայացված են եղել արաբ. դասական գրականության բոլոր հիմնական ժանրերը (տես *Արաբական մշակույթ*, Գ ր ա կ ա ն ու թ յ ու ն բաժինը): Ինքնուրույնության գծերը երևան են եկել XI—XII դդ.: XIII դ. սկզբին ծայր է առել գեղարվեստական տաղեքրությունը, որը շարունակվել է նաև XIX դ.:

XV—XVI դդ. ստեղծվել է կենսագրական ու կենցաղագրական հարուստ գրականություն: Արաբ. դասական պոեզիայի ավանդույթները Մ-ի գրականության մեջ հասել են ընդհուպ մինչև XX դ. կեսերը:

Արաբերենով ու բերբերերենով ժող. գրականությունը, առավելապես բանավոր, հայտնի է XIV—XV դարերից և ներկայացված է բանաhյուսական ու հեղինակային գործերով (չափածո և արձակ):

Արաբերենով ու ֆրանսերենով ժամանակակից գրականությունը նկատելի երևվույթ դարձավ 2-րդ համաշխարհային պատերազմից հետո: Արաբալեզու արձակագիր Ա. Մ. Բենժելունը (ծն. 1919) և ֆրանսերենով գրող Ա. Սաֆրիուին (ծն. 1915) առաջինը գրականություն բերեցին ժողովրդի կյանքի թեման: 1950-ական թթ. առաջատար էր ֆրանսալեզու վեպը, որի հիմնական ներկայացուցիչն է Դ. Շրայբին (ծն. 1928): Այդ շրջանում հայտնի դարձան բանաստեղծներ Մ. Ա. Լահբաբիի (ծն. 1922, ֆրանսերենով գրող) և Մ. ալ Մուխթար աս Սուսիի, Մ. ալ Խալասիի, Բ. Լամտունիի, Մ. Սաբբաիի, Մ. աթ Թանժաուիի (գրական արաբերենով գրող) ստեղծագործությունները: 1960-ական թթ. սկզբին Խ. Սաիիի գրական արաբերենով պատմական պիեսներից հետո երևան եկավ Ֆարիդ Ֆարիսի (ֆրանսերենով) և Ա. Բեն Շեքրունի, Ա. Ալաժիի (արաբերենի մարոկկոյական բարբառով) դրամատուրգիան:

1960-ական թթ. կեսերից սկսվեց արաբալեզու արձակի բուռն վերելքը (Ա. Կ. Գալլաբ, Մ. Բուալլու, Մ. Զնիբեր, Ա. Սիհմի և ուրիշներ):

**XIII. Ճարտարապետությունը և կերպարվեստը**

Մ-ի տարածքում պահպանվել են նեոլիթի շրջանի ժայռապատկերներ, փյունիկեցիների բնակատեղիների մնացորդներ, կարմիր ջնարակով խեցեղեն, հռոմ. քաղաքների (Վոլյուբիլիս, Թամուդ, Թինգիս ևն) ավերակներ՝ քանդակներով, խճանկարի հատվածներով: XI—XV դդ. Մ-ի տարածքում կազմավորվել է մավրիտանական արվեստի դպրոցներից մեկը: Մ-ի միջնադարյան քաղաքները կազմված են «կասբա»-ից (միջնաբերդ) և «մեդինա»-ից (բուն քաղաքը)՝ շրջափակված ուղղանկյուն հատակագծով աշտարակներ ունեցող պարիսպներով (Ռաբաթ): Շինանյութը՝ քար, բետոն, կավ, աղյուս: Պաշտամունքային ճարտ-յան բնորոշ օրինակներից են բազմասյուն աղոթասրահով մզկիթները, որոնց կամարաշարերը նայում են դեպի ուղղանկյուն հատակագծով բակը. միհրաբով պատին կից նավը, ինչպես և առանցքայինը, ծածկված է ստալակտիտե կամ բջջավոր գմբեթներով և փայտե հավաքովի առաստաղներով՝ արտեսոնադոներով (Ֆեսի Կարաուին, 859, ընդարձակվել է 956-ին և 1135-ին, Մառաքեշի Կուտուբիա, 1153, մզկիթները): Բնորոշ են քարե (ինչպես նաև փայտե) քանդակազարդ հարդարանքով, քառակուսի հատակագծով աշտարակաձև մինարեները (Մառաքեշի Կուտուբիա մզկիթի մինարեն, 1184—99), սլաքաձև-պայտաձև, բազմաթև ժանիքից կամարները: XI—XIII դդ. բարձր մակարդակի է հասել ամրաշինությունը. կառուցվել են ամրոցներ (Ամարգու, Ֆեսի մոտ, XI դ., Թասգիմուտ, Մառաքեշի մոտ, XII դ.) և ուղղանկյուն հատակագծով աշտարակներով և քանդակազարդ քարե դարպասներով քաղաքային ամրություններ (Բաբ-Աղվենաու՝ Մառաքեշում, XIIդ.): XIII—XIV դդ. ճարտ-յան մեջ առանձնապես զարգացել է հարդարանքը՝ արհես-



Բրոնզե գլուխ (Վոլյուբիլիս, հռոմեական ժամանակաշրջան)



Ֆեսի Կարաուին մզկիթի (859, 956, 1135) գմբեթի ներսը

տական մարմարի և փայտի վիրտուոզ քանդակազարդում, ջնարակված խոխճապակիներ, խեցե և ապակե խճազարդեր, վիտրաժներ (Թազայի Մեծ մզկիթը, XII—XIII դդ., Աթթարին մեդրեսեն Ֆեսում, 1323—25): XVI—XVII դդ. հուշարձանները աչքի են զարնում ճոխությամբ (դամբարանների անսամբլը Մառաքեշում,

Բերբերների ժողովրդական գորգերի զարդամոտիվներ

XVI դ. 2-րդ կես): XVIII—XIX դդ. կառույցներից առանձնանում են Բաբ ալ Մանսուր դարպասը (1732) Մեկնեսում, Ֆեսի Դար-Բատա, Մեկնեսի Դար-Ջամաի և Մառաքեշի Դար ալ Մակզեն պալատները (բոլորը՝ XIX դ.): Միջնադարում են կազմավորվել XX դ. ևս պահպանված ժող. բնակարանի տիպերը՝ երկհարկ, ներքին բակով քարե տներ (Ռաբաթ, Սալե), աշտարակավոր տուն-ամրոցներ (Բարձր Ատլաս), շրջանաձև հատակագծով, կոնաձև կտուրով խրճիթներ (Ռաբաթին մոտ), երկթեք եղեգնյա կտուրներով բնակարաններ (երկրի հս-ում): Միջնադարում կատարելության են հասել ոստայնանկությունը, գորգագործությունը, կաշվի դրոշմումը, խեցեգործությունը, բրոնզի գեղարվեստական մշակումը (մզկիթների ցանցկեն, բազմահարկ ջահեր): Ֆրանս. պրոտեկտորատի շրջանում քաղաքներում կառուցվել են եվրոպական թաղամասեր (ֆրանս. ճարտ. Ա. Պրոստ, Մ-ում աշխատել է 1912—23-ին): XX դ. 1-ին կեսին ճարտ-յան մեջ կիրառվել է «մորեսկ» ոճը (մավրիտանական ճարտ-յան դեկորատիվ տարրերի էկլեկտիկ օգտագործում): 1950-ական թթ. Ռաբաթում և Կասաբլանկայում կառուցվել են շենքեր ժամանակակից շինանյութերով ու կոնստրուկցիաներով («Լիբերտե» շենքը Կասաբլանկայում, 1950, ճարտ. Լ. Մորանդի, Ռաբաթի հոսպիտալը, 1950-ական թթ. սկիզբ, ճարտ. Է. Դելապորտ): Անկախության նվաճումից (1956) հետո լայն թափ է ստացել զանգվածային բնակելի տների, արդ. և հասարակական կառույցների շինարարությունը (մարոկկացի ճարտ-ներ Է. Ազագուրի, Ժ. Ֆ. Զևակո, ֆրանսիացի ճարտ-ներ Ժ. Կանդիլիս, Շ. Վուդս): Զարգանում է Մ-ի համար նոր կերպարվեստը (գեղանկարիչ՝ Մ. Ա. Իդրիսի, քանդակագործ՝ Հ. Բեն Սալահ, գրաֆիկ՝ Մ. Ամմար): Ռաբաթում, Կասաբլանկայում և այլ քաղաքներում ստեղծվել են կիրառական արվեստի կոոպերատիվներ: Զարգանում են գորգագործությունը, կաշվի ասեղնագործումն ու դրոշմումը, պղնձի դրվագումը:

**XIV. Երաժշտությունը**

Մ-ի երաժշտությունը բերբերական և արաբ. մշակույթների փոխազդեցության արդյունք է: Բերբերական երաժշտական արվեստին, որի «մաքուր» նմուշները պահպանվել են Մ-ի կենտրոնական մասում (հիմնականում հեռավոր գյուղական շրջաններում), բնորոշ է երաժշտության սերտ կապը բանաստեղծության և պարի հետ. ամենատարածված ժանրը խմբական երգ-պարն է: Առանձնանում է ախիդու (հս-արլ-ում բնակվող) և ախուախ (հվ-արմ-ում բնակվող) բերբերների արվեստը: Բերբերների երաժշտական գործիքներից են՝ կասբա (ֆլեյտա), բենդիր (դափ), էլ-կալալ ջա և ու-էր-ռբաբ (ջութակներ) են: Բազմազան է արաբ. երաժշտական արվեստը: Գոյություն ունի դասական (ալա և ռամա) և ժող. (գրիխա) արաբ. երաժշտություն: Ալան աշխարհիկ, պալատական արվեստ է, որի հիմքը արաբ. դասական պոեզիան է, ռաման՝ կրոնական բովանդակությամբ արվեստ (յուրատեսակ հոգևոր պոեմներ): Գրիխան հասարակ մարդկանց երգերն են՝ հիմնված խոսակցական լեզվի վրա: Արաբ. երաժշտական գործիքներից են՝ լյուտնյա, քնար, ռեբաբ, ցիտրա:

Մարոկկացիների ժող. ստեղծագործության մեջ մեծ տեղ է գրավում կրոնական երաժշտությունը՝ դիկրը: Այլ ժանրերից տարածված են օրորոցային, աշխատանքային երգերը, ծիսական պարերի, շքահանդեսների երաժշտությունը են:

Մ-ում գործում են Երաժշտության, պարի և դրամատիկ արվեստի ազգային կոնսերվատորիա (Ռաբաթ), Երաժշտության և պարի ազգային դպրոց (Թեթուան): 1960-ից Մառաքեշում անց են կացվում երաժշտ. բանահյուսության ամենամյա ազգային փառատոներ:

**XV. Կինոն**

Մ-ում առաջին կինոնկարահանումներին (1907) և առաջին գեղարվեստական ֆիլմերի ստեղծմանը մասնակցել են արտասահմանցի, հիմնականում՝ ֆրանսիացի, ռեժիսորներ և օպերատորներ: Արաբերենով ֆիլմերի ստեղծման նպատակով 1944-ին Ռաբաթում կառուցվել է «Սուսսի» կինոստուդիան, հիմնադրվել Մարոկկոյական կինոկենտրոնը: Սակայն ազգային կինոարտադրությունն սկզբնավորվել է Մ-ի անկախությունից (1956) հետո միայն: 1958-ից թողարկվել է «Մարոկկոյական նորություններ» կինոժուռնալը: 1970-ին Այն Շոկում (Կասաբլանկայի արվարձան) հիմնադրվել է երկրորդ կինոստուդիան: Ստեղծվել են ժամանակակից խնդիրներ արծարծող գեղարվեստական ֆիլմեր՝ «Հաղթել՝ ապրելու համար» (1968, ռեժ. Մ. Թազի և Ա. Մեսնաուի), «Հետքեր» (1970, ռեժ. Համիդ Բեննանի), «Հազար ու մի ձեռք» (1973, ռեժ. Ս. Բեն Բարկա) են: 1972-ին գործել է 255 կինոթատրոն: Տարեկան թողարկվում է շուրջ 20 կարճամետրաժ ֆիլմ:

Պատկերազարդումը տես 368—369-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակ IV:

*Գրկ.* Горнунг М. Б., Уткин Г. Н., Марокко, М., 1966; Аяш А., Марокко, [пер. с франц.], М., 1958; Аваков Р. М., Марокко, М., 1957; Նույնի, Марокко от протектората к независимости, М., 1961; Солоницкий А. С., Социально-экономическое развитие современного Марокко, М., 1965; Завадовский Ю. Н., Марокканская литература на арабском языке, в кн.: Фольклор и литература народов Африки, М., 1970; Веймарн Б., Каптерева Т., Подольский А., Искусство арабских народов, М., 1960; Всеобщая история архитектуры, т. 8, М., 1969, с. 85—100; Шоттен А., Обзор марокканской музыки, [пер. с франц.], М., 1968.

**ՄԱՐՈԿԿՈՅԻ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆ (ՄԱՍԿ),** քաղաքական կուսակցություն, ստեղծվել է 1974-ի օգոստոսին: ՄԱՍԿ կանոնադրության մեջ նշվում է, որ կուսակցությունը իր նպատակն է համարում շահագործումից զերծ իսկական սոցիալիստական արտադրության հասարակարգի ստեղծումը: ՄԱՍԿ հանդիսանում է Մարոկկոյի բանվոր դասակարգի և աղքատ գյուղացիության հեղափոխական ավանգարդը: Կուսակցությունը պայքարում է ազգային ինքնուրույնության, երկրի անկախության ամրապնդման, դեմոկրատական ազատությունների ընդլայնման, հակաիմպերիալիստական, հակաֆեոդալական ազգային ճակատի շրջանակներում երկրի հայրենասիրական ու առաջադիմական ուժերի միավորման, ՍՍՀՄ-ի և Մարոկկոյի միջև բարեկամական հարաբերությունների խորացման և ընդլայնման համար: ՄԱՍԿ կառուցված է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքով: ՄԱՍԿ բարձրագույն մարմինն է կուսակցության ազգային համագումարը, որն ընտրում է ԿԿ և ԿՎՀ: Գլխավոր քարտուղարն է Ալի Յատան: Հրատարակում է «Ալ-Մաբադի» ամսագիրը և «Ալ-Բայան» թերթը:

**ՄԱՐՈԿԿՈՅԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆ (ՄԿԿ)**, ստեղծվել է 1943-ի նոյեմբերին: ՄԿԿ I համագումարը (1946-ի ապրիլ) ժողովրդին կոչ արեց միավորել ուժերը երկրի անկախության, դեմոկրատական ազատությունների ու աշխատավորության դրության բարելավման համար պայքարում: 1953—56-ին Մարոկկոյի կոմունիստները մասնակցել են ֆրանս. գաղութարարների դեմ ուղղված զինված պայքարին: Մարոկկոն սուվերեն պետություն հռչակվելուց (1956) հետո ՄԿԿ հանդես է եկել հանուն ազգային անկախության ամրապնդման, երկրում եղած օտարերկրյա ռազմ. բազաների վերացման ու զորքերի դուրսբերման, տնտ. ինքնուրույնության, ագրարային ռեֆորմի իրականացման: ՄԿԿ գործունեությունը բազմիցս (1952, 1959, 1960-ին) արգելվել է: 1968-ին Մարոկկոյի կոմունիստները հայտարարեցին ազատության և սոցիալիզմի կուսակցության (ԱՍԿ) ստեղծման մասին, որը մինչև 1974-ը գործել է կիսալեգալ պայմաններում: ԱՍԿ ղեկավարությունը պայքարել է երկրի այլ քաղ. ուժերի հետ դաշինքի ամրապնդման, «հակաիմպերիալիստական ու հակաֆեոդալական բնույթի միասնական ժողովրդական ճակատի» ստեղծման համար: 1974-ին հայտարարվել է *Մարոկկոյի առաջադիմության և սոցիալիզմի կուսակցության* ստեղծման մասին:

**ՄԱՐՈՂ ՏԱՏԱՆՈՒՄՆԵՐ**, ֆիզիկական մեծության պարբերական փոփոխումներ,

որոնց առավելագույն շեղումը հավասարակշռության վիճակի նկատմամբ (պայմանական ամպլիտուդ, $X_0$) նվազում է ժամանակի ընթացքում: Մ. տ-ից են ազատ կամ *սեփական տատանումները*, որոնց ամպլիտուդը նվազում է տատանման էներգիայի կորուստների պատճառով: Մեխանիկական համակարգում էներգիայի կորուստը պայմանավորված է շփումով և արտաքին միջավայր ճառագայթվող առաձգական ալիքներով, իսկ էլեկտրական համակարգում՝ հաղորդիչների ակտիվ դիմադրությամբ, դիէլեկտրիկ և ֆեռոմագնիսական միջավայրերի կլանմամբ և էլեկտրամագնիսական ալիքների ճառագայթմամբ: Միևնույն նշանի երկու իրար հաջորդող ամպլիտուդային արժեքների միջև ընկած ժամանակամիջոցը (T) պայմանականորեն կոչվում է Մ. տ-ի պարբերություն: Հաստատուն պարամետրերով գծային համակարգերում ազատ տատանումների ամպլիտուդը նվազում է էքսպոնենտային $X(t)=X_0e^{-\alpha t}\cos\omega t$ օրենքով (նկ.),



Մարող տատանումներ

որտեղ α-ն մարման ցուցիչն է, t-ն՝ ժամանակը, ω-ն՝ «անկյունային հաճախականությունը»: Վերջինս որոշվում է $\omega=\frac{1}{2\pi T}\sqrt{\omega_0^2-\alpha^2}$ արտահայտությամբ, որտեղ $\omega_0$-ն տատանողական համակարգի անկյունային հաճախականությունն է կորուստների բացակայության դեպքում: Պարզագույն էլեկտրական տատանողական կոնտուրի դեպքում $\alpha=R/2L$, որտեղ R-ը կոնտուրի ակտիվ դիմադրությունն է, L-ը՝ ինդուկտիվությունը: Պարզագույն մեխանիկական տատանողական համակարգի դեպքում մածուցիկ միջավայրում առաձգական ուժի ազդեցությանը ենթարկվող m զանգվածի համար $\alpha=b/2m$, որտեղ b-ն առաձգական ուժի և արագության համեմատականության գործակիցն է: Մարող տատանողական պրոցեսը հաճախ բնութագրվում է *մարման դեկրեմենտով*: *Ա. Սահակյան*

**ՄԱՐՈՆԱԿԱՆՆԵՐ** (ինքնանվանումը՝ մարունի), արևելյան-քրիստոնեական եկեղեցու հետևորդներ, որոնք կազմում են Լիբանանի արաբ ժողովրդի գլխավոր համայնքներից մեկը: Անունն ըստ ավանդության առաջացել է Մար Մարոնից (IV—V դդ.): VII դ. վերջին Մ. իրենց առաջին պատրիարքի՝ Ցուհաննա Մարոնի գլխավորությամբ կենտր. Ասորիքից ապաստանել են Լիբանան լեռ (Ջիբբատ Բշարրիի շրջան), իրենց դավանանքը պարտադրել տեղաբնիկ հեթանոս լեռնականներին և քրիստոնյա բնակչությանը (հակոբիկյան ասորի, քաղկեդոնական հույն են), կազմել ինքնուրույն համայնք: 1182-ին Մ. ճանաչել են Վատիկանի գերագահությունը՝ պահպանելով սեփական ծիսակատարությունը (ասորերեն, որին զուգընթաց, հետագայում նաև արաբերեն): Մ-ի հոգևոր պետի՝ «Անտիոքի պատրիարքի» նստավայրը Բկերկեն է (Բեյրութից 15 *կմ* հս-արլ.): Մ-ի մոտ խոսակցական արաբերենի (սիրիա-լիբանանյան բարբառ) տարածումն սկսվել է XVI դ., երբ Լիբանանի հս-ի մարոնաբնակ շրջանները հետզհետե առնչվել են դրուզական (1770-ից համալիբանանյան) ամիրայության հետ: XVII դ. վերջից Կիլիկիայից Լեռնալիբանան տեղափոխված բազմաթիվ հայեր աստիճանաբար միաձուլվել են Մ-ի հետ: Մ-ի թիվը Լիբանանում 600 հզ. է (1971):

Համաձայն 1943-ի «Ազգային ուխտի», Լիբանանի պրեզիդենտը, պառլամենտի անդամների մոտ 1/3-ը պետք է լինեն Մ.: *Ե. Նաջարյան*

**ՄԱՐՉ** (March) Ֆրեդերիկ (իսկական անունն, ազգանունը Էռնեստ Ֆրեդերիկ Մակ-Ինթայր Բիքել, McIntyre, Bickel, ծն. 1897), ամերիկյան կինոդերասան: Սովորել է Վիսկոնսին նահանգի համալսարանում: 1920-ից ելույթ է ունեցել Նյու Յորքի թատրոններում: Կինոյում աշխատել է 1929-ից: 1930-ական թթ. եղել է Հոլիվուդի առաջատար դերասաններից: Լավագույն դերերից են՝ Ժան Վալժան («Թշվառներ», ըստ Հյուգոյի, 1935), Ալ Ստեֆենսոն («Մեր կյանքի լավագույն տարիները», 1946), գերմանացի ֆինանսիստ («Ալտոնայի մենակյացները», 1963), ամերիկացի պրեզիդենտ («Յոթ օր մայիսին», 1963) են: Մ. ստեղծել է բարդ, հակասական կերպարներ:

**ՄԱՐՋԱՆԻՇՎԻԼԻ**, Մարջանով, Կոնստանտին (Կոտե) Ալեքսանդրի [28.5 (9.6).1872, Կվարելի — 17.4.1933, Մոսկվա], սովետական ռեժիսոր: ՎՍՍՀ ժող. արտիստ (1931): Բեմական գործունեությունն սկսել է 1893-ին Քութայիսում, որպես դերասան այլ դերերի շարքում՝ խաղալով նաև Մասխյանցի դերը (Սունդուկյանի «Խաթաբալա»): 1894-ին անցել է ռուս. բեմ՝ որպես ռեժիսոր ստեղծելով բազմաթիվ ներկայացումներ Իրկուտսկի, Սարատովի, Ռոստովի և այլ քաղաքների թատրոններում, ապա՝ ղեկավարել Ռիգայի Նեզլոբինի խումբը, որը բեմադրել է Գորկու, Բլոկի, Չեխովի, Լ. Անդրեևի, Նայդյոնովի մի շարք պիեսներ: 1910—1913-ին աշխատել է ՄԳԱԹ-ում (Կ. Համսունի «Կյանքի ճիրաններում», Իբսենի «Պեր Գյունտ»): 1913—14-ին Մոսկվայում կազմակերպել է Ազատ թատրոնը՝ ձգտելով ընդլայնել բեմարվեստի սինթետիկ հնարավորությունները: Այստեղ համագործակցել է հայ դիրիժոր Կ. Սարաջևի և երգիչ Ա. Կարատովի հետ: 1914-ին Ռոստովում բեմադրել է Լ. Շանթի «Հին աստվածներ» պիեսը, որը տեղի հայկ. մամուլը համարել է «գովելի ձեռնարկություն», «ռուսական որոնող թատրոնի խաղացանկը մի չքնաղ գոհարով ճոխացնող գործ»: 1919-ին Կիևում բեմադրել է Լոպե դե Վեգայի «Ֆուենտե օվեխունա» դրաման՝ ներկայացմանը հաղորդելով հեղափոխական մեծ թափ ու հերոսական ոգի: 1920-ին Պետրոգրադում կազմակերպել է Կոմիկական օպերայի թատրոնը և մասնակցել մասսայական թատերականացված հանդեսների բեմադրություններին: 1922-ից՝ Թիֆլիսի նորաստեղծ Ռուսթավելու անվ. թատրոնի գլխավոր ռեժիսոր: Վրաց. բեմի սովետական վերածնունդը ամբողջովին կապված


Կ. Ա. Մարջանիշվիլի


Տեսարան Գուցկովի «Ուրիել Ակոստա» պիեսի ներկայացումից (1929, Քութայիսի պետթատրոն), ռեժ. Կ. Մարջանիշվիլի

է Մ-ի անվան հետ: Ռուս. բեմի հեղափոխ. ավանդույթները Մ. այստեղ ներդաշնակել է վրաց. թատրոնի ազգային խառնվածքին: Լոպե դե Վեգայի «Ֆուենտե օվեխունա», Զ. Անտոնովի «Արևի խավարումը Վրաստանում», Գ. Էրիսթավիի «Բաժանություն», Շեքսպիրի «Համլետ», Աղիանիի «Դասալիք կինը» բեմադրությունները նպաստել են վրաց բեմարվեստի բուռն զարգացմանը: 1928-ին Մ. Քութայիսում հիմնադրել է 2-րդ պետական թատրոնը (այժմ՝ Թբիլիսիում, տես *Վրաստանի Մարջանիշվիլու անվան թատրոն*): Տոլլերի «Հոպլա՜, մենք ապրում ենք», Գուցկովի «Ուրիել Ակոստա», Կիրշոնի «Հաց», Լավրենյովի «Բեկում», Կակաբաձեի «Կվարկվարե Թութաբերի» բեմադրություններով վրաց բեմն ապրել է աննախընթաց վերելք, երկու ազգային թատրոններում աճել են Վ. Անջափարիձեի, Ու. Չխեիձեի, Վ. Գոձիաշվիլու, Ա. Խորավայի, Ա. Վասաձեի, Թ. Ճավճավաձեի, Ս. Զաքարիաձեի նման դերասաններ: Թիֆլիսի Հայ դրամայի «Ֆուենտե օվեխունա» և Ն. Աղիանիի «Դասալիք կինը» («Դեզերտիրկա») բեմադրությունները իրականացվել են ըստ Մ-ի ռեժիսորական մտահղացման: Կյանքի վերջին տարիներին աշխատել է Մոսկվայի Փոքր թատրոնում, որպես գլխավոր ռեժիսոր: Բեմադրություններ է տվել նաև Թիֆլիսի օպերային թատրոնում: Վրաստանում ստեղծել է մի շարք ֆիլմեր: Հայ արվեստի գոր-

ծիչներից մոտիկից շփվել է Հ. Դանիելյանի, Լ. Իսեցկու հետ: Տարբեր առիթներով Մ-ի արվեստը հատուկ ուշադրության նյութ են դարձրել Օ. Սևումյանը և Ս. Քափանակյանը:

Գրկ. Քալանթար Լ., Կոտե Մարջանիշվիլի, «Խորհրդային արվեստ», 1933, № 5: Խալաթյան Լ., Առասպելական մարդը, ռեժիսորը, քաղաքացին, «Սովետական արվեստ», 1973, № 2: Воспоминания, статьи, т. 1—2, Тб., 1958—66; Крижицкий Г., Марджанов и русский театр, М., 1954; Гугушвили Э., Коте Марджанишвили, М., 1979. *Լ. Խալաթյան*

**ՄԱՐՋԱՆՅԱՆ** Ալեքսանդր (Ալիս) Միսակի [ծն. 8(21).7.1904, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)], հայ սովետական ինժեներ-մեխանիկ: Տեխ. գիտ. թեկնածու (1942): ՍՄԿԿ անդամ 1944-ից: Ավարտել է Երևանի համալսարանը (1929) և Լենինգրադի պոլիտեխնիկական ինստ-ը (1934): Եղել է Հոկտեմբերյանի մեխանիկական գործարանի (1938—41) և Երևանի ավտոդետալ գործարանի (1948—55) դիրեկտորը: 1934—68-ը դասավանդել է ՀՍՍՀ բուհերում: 1952-ից ՀՍՍՀ ԳԱ մեքենաշինության տեխնոլոգիայի հանձնաժողովի նախագահն է:

*Երկ.* Տրակտորներ, 2-րդ ուղղ. և լր., Ե., 1939: Ավտոմոբիլային շարժիչներ, Ե., 1953: Հայաստանի մեքենաշինության ավտոմատացման հարցեր, Ե., 1963:

**ՄԱՐՋԱՆՅԱՆ** Գեղեոն Միսակի [11.9.1907, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)—26. 8.1977, Երևան], հայ սովետական միջատաբան: Կենսբ. գիտ. դ-ր (1970): ՍՄԿԿ անդամ 1943-ից: Ավարտել է Երևանի համալսարանի գյուղատնտ. ֆակուլտետը (1930): 1933—48-ին եղել է ՀՍՍՀ բույսերի պաշտպանության, 1948—52-ին՝ ՀՍՍՀ ԳԱ ֆիտոպաթոլոգիայի և կենսաբանության ինստ-ների դիրեկտոր, միաժամանակ՝ ԳԱ կենսբ. բաժանմունքի ակադեմիկոս քարտուղարի տեղակալ: 1950—70-ին դասավանդել է Հայկ. գյուղատնտ. ինստ-ում և Երևանի համալսարանում: Գիտ. աշխատանքները վերաբերում են ՀՍՍՀ-ում տարածված գյուղատնտ. վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարի արդյունավետ եղանակների մշակման հարցերին:

*Երկ.* Ֆոսֆոր-օրգանական ինսեկտիցիդներ, Ե., 1962: Սևին, Ե., 1968:

**ՄԱՐՋԱՆՅԱՆ** Հայկազ Հովհաննեսի (23. 11.1900, գ. Քյուլփի, Սուրմալուի գավառ—8.1.1967, Երևան), կուսակցական և պետական աշխատող: Գյուղատնտ. գիտ. թեկնածու (1955): ՍՄԿԿ անդամ 1932-ից: Ավարտել է Երևանի համալսարանի գյուղատնտ. ֆակուլտետը (1928): 1933—35-ին եղել է Երևանի կոմունիստական համալսարանի պրոռեկտոր, 1938—45-ին՝ ՀՍՍՀ հողժողկոմ, 1945—46-ին՝ ՀՍՍՀ Ժողկոմխորհի նախագահի տեղակալ, 1946—47-ին՝ ՀԿԿ Կենտկոմի գյուղատնտ. բաժնի վարիչ, 1948—50-ին՝ ՀՍՍՀ սննդիամի (1949-ից՝ սննդի) արդյունաբերության մինիստր, 1953—56-ին՝ ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի գյուղատնտ. բաժնի վարիչ, 1956—1967-ին՝ Հայկ. գյուղատնտ. ինստ-ի ռեկտոր: ՀՍՍՀ II և V գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Պարգևատրվել է Լենինի (2), Աշխատանքային կարմիր դրոշի, «Պատվո նշան» շքանշաններով:

**ՄԱՐՋԱՆՅԱՆ** Հարություն Միսակի [ծն. 1912, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)], հայ սովետական ինժեներ-հիդրոտեխնիկ: ՀՍՍՀ վաստակավոր ինժեներ (1966): ՍՄԿԿ անդամ 1945-ից: Ավարտել է Երևանի պոլիտեխնիկական ինստ-ը (1940): 1946-ից աշխատել է «Հիդրոնախագիծ» ինստ-ում, մասնակցել է Գյումուշի ՀԷԿ-ի նախագծմանը: 1949—52-ին եղել է Արզնիի ՀԷԿ-ի, իսկ 1952—59-ին՝ Աթարբեկյանի ՀԷԿ-ի նախագծի գլխավոր ինժեները: 1962-ից Արփա-Սևան նախագծի գլխավոր ինժեներն է:

**ՄԱՐՋԱՆՍՈՒ**, գետ Արևմտյան Հայաստանում: Տես *Մախարձ:*

**ՄԱՐՍ**, հայկական անվանումը՝ Հրատ, Արեգակնային համակարգի՝ Արեգակից հեռավորությամբ չորրորդ մոլորակը: Աստղագիտական նշանը՝ ♂: Արեգակի շուրջը պտտվում է էլիպսային ուղեծրով: Միջին հեռավորությունը Արեգակից 228 մլն *կմ* է (արևամերձ կետում՝ 206, արևահեռ կետում՝ 249 մլն *կմ*): Ուղեծրային հարթությունը խավարածրի հարթության հետ կազմում է 1,8° անկյուն: Շարժման միջին գծային արագությունը 24,2 *կմ/վրկ* է, պտտման պարբերությունը՝ 687 երկրային օր (1,88 տարի): Դիմակայություններում (երբ Արեգակը Երկրի մի կողմում է, Մ.՝ մյուս) լինում է 780 օր պարբերությամբ: 15—17 տարին մեկ Երկրից գտնվում է նվազագույն (56,5 մլն *կմ*) հեռավորության վրա (մեծ դիմակայություն):

Մ. իր առանցքի շուրջը պտտվում է 24 *ժ* 37 *ր* 22,7 *վրկ* պարբերությամբ, այսինքն՝ գիշերվա ու ցերեկվա տևողությունները երկրայինին մոտ են: Պտտման առանցքն ուղեծրային հարթության հետ կազմում է 64,8° անկյուն: Տարվա եղանակներն երկրայինից մոտ երկու անգամ երկարատև են:

Մ-ի շառավիղը երկրայինից մոտ երկու անգամ փոքր է և հավասար է 3386 *կմ*: Բևեռներում սեղմված է: Զանգվածը երկրայինից փոքր է մոտ 10 անգամ և հավասար է $6{,}423\cdot10^{22}$ *կգ*, միջին խտությունը 3,97 $գ/սմ^3$ է, ձգողության ուժի արագացումը մակերևույթի վրա՝ 3,72 $մ/վրկ^2$: Մակերևույթի միջին ջերմաստիճանը —57°C է: Հասարակածում ջերմաստիճանը կեսօրին լինում է +30°, երեկոյան՝ 0°, կեսգիշերին՝ —90°C:

Մ-ի մակերևույթի մեծ մասը ավազապատ է: Բևեռամերձ շրջաններն ունեն սպիտակ ծածկույթներ՝ Մարսի բևեռային գլխարկներ, որոնց չափերը տարվա ընթացքում փոփոխվում են. ձմռանը մեծանում են, ամռանը՝ փոքրանում, երբեմն էլ՝ անհետանում: Դրանք կազմված են պինդ ածխաթթու գազից ($CO_2$), որի տակ գտնվում է ջրային սառույց: Մ-ի մակերևույթի վրա կան 250 *մ*-ից մինչև մի քանի հարյուր *կմ* չափերով օղակաձև լեռներ: «Ջրանցքներ», որոնց գոյությունը որոշ գիտնականներ ենթադրում էին, Մ-ի վրա չկան: Դրանք իրականում լեռների արանքում ընկած կիրճեր են կամ բարձր լեռների եզրագծեր: Մակերևույթին մոտ շերտերում՝ 30—50 *սմ* խորության վրա ջերմաստիճանի օրական փոփոխություններ տեղի չեն ունենում, այսինքն՝ մոլորակի արտաքին շերտի ջերմահաղորդականությունը փոքր է, իսկ ջերմային իներցիան՝ մեծ:

Մ-ի մթնոլորտը նոսր է. ճնշումը մակերևույթին հավասար է 5—7 *մբարի*: Մթնոլորտը հիմնականում կազմված է ածխաթթու գազից: Համեմատաբար ցածր շերտերում կան փոքր քանակությամբ ջրային գոլորշիներ (5 հզ. անգամ քիչ, քան Երկրի մթնոլորտում): Ազոտ ու նրա միացություններ չեն հայտնաբերվել: Օզոնի քանակը բավարար չէ կանխելու կենդանի օրգանիզմների վրա Արեգակի ուլտրամանուշակագույն ճառագայթների վտանգավոր ազդեցությունը: Մ. ունի շատ թույլ մագնիսական դաշտ (լարվածությունը երկրայինից 500 անգամ փոքր է):

Մ. ունի երկու բնական արբանյակ՝ Ֆոբոս և Դեյմոս: Ֆոբոսը 26×21 *կմ* չափերի տձև, իսկ Դեյմոսը մոտ 13 *կմ* տրամագծով քարաբեկորներ են: Ֆոբոսը գտնվում է Մ-ից 9400 *կմ*, իսկ Դեյմոսը՝ 23500 *կմ* հեռավորության վրա: Երկուսն էլ ունեն ուղիղ պտույտ: Պտտման հարթությունները Մ-ի հասարակածի նկատմամբ համապատասխանորեն թեքված են 1,8° և 1,4°-ով: Մ-ի շուրջը Դեյմոսը պտտվում է 1 օր 6 *ժ* 18 *ր*, իսկ Ֆոբոսը՝ 7 *ժ* 39 *ր* 27 *վրկ* պարբերությամբ: Արբանյակների վրա կան 500 *մ*—2000 *մ* չափերի խառնարաններ:

Որպես մոլորակ Մ. մարդկությանը հայտնի է հնուց: Մեծ դիմակայություններին ժամանակ Մ. կեսգիշերային երկնքում ամենապայծառ (—2,7 *աստղային մեծություն*), նարնջակարմրագույն աստղն է երևում, որի հետևանքով այն համարում էին պատերազմի Մարս աստծու ատրիբուտը: Ըստ Տ. Բրահեի և Յո. *Կեպլերի* դիտումների, արդեն XVII դ. սկզբին որոշվեցին մոլորակների շարժումների օրենքները *Արեգակնային համակարգում*: Մ-ի ֆիզիկական հատկությունները սկսեցին ուսումնասիրվել միայն XVII դ. կեսին, երբ երևան եկան բավականաչափ հզոր աստղադիտակներ, որոնց օգնությամբ հնարավոր էր դիտել Մ-ի առանձին մանրամասներ, այդ թվում՝ բևեռային գլխարկները (Ք. *Հյուգենս*, 1656) և մութ «ծովերը» «ցամաքի» լուսավոր ֆոնի վրա: Այս մանրամասների դիտումը հնարավորություն տվեց կատարել Մ-ի պտտման պարբերության առաջին գնահատումը (24 *ժ* 40 *ր*, Ջ. Կասինի, 1666): Մ-ի ինտենսիվ հետազոտություններն սկսվեցին XIX դ. կեսին, հատկապես 1877-ին՝ Մ-ի մեծ դիմակայությունից հետո, երբ Ջ. Սկիապարելին, դիտելով այդ մոլորակը, դրա մակերևույթի վրա հայտնաբերեց մեծ թվով նոր մանրամասներ, այդ թվում՝ բազմաթիվ ուղղագիծ մութ գոյացումներ, որոնց նա պայմանականորեն անվանեց «ջրանցքներ»: Դրանց բնույթի վերաբերյալ արտահայտված կարծիքները տարբերվում էին իրարից. շատ գիտնականներ կասկածում էին «ջրանցքների» գոյությունը՝ պնդելով, որ դրանք մոլորակի սկավառակի վրա չափազանց փոքր մանրամասներ դիտելու հետևանքով առաջացած հոգեֆիզիոլոգիական պատրանքի հետևանք են: XIX դ. վերջին և XX դ. սկզբին Պ. Լովելը այդ «ջրանցքներին» վերագրեց

ուղղակի իմաստ և դրա, ինչպես նաև մոլորակի վրա ֆիզիկական պայմանների գնահատման հիման վրա արտահայտեց ու սկսեց համառորեն պրոպագանդել Մ-ի՝ բանական էակներով բնակեցված լինելու գաղափարը: Աստղաֆիզիկական մեթոդներով Մ-ի հետագա հետազոտումը, որում մեծ ավանդ ունեն սովետական գիտնականները, հանգեցրեց այդ մոլորակի վրա գոյություն ունեցող ֆիզիկական պայմանների ճշտման: Մ-ի լուսանկարումը չհաստատեց «ջրանցքների» գոյությունը: Ուսումնասիրման նոր և չափազանց բեղմնավոր փուլ սկսվեց տիեզերական դարաշրջանի սկզբի և դեպի Մ. տիեզերական զոնդերի՝ ամերիկյան *«Մարիներ»* և սովետական *«Մարս»* ավտոմատ միջմոլորակային կայանների արձակման հետ: Դրանց օգնությամբ մոտ տարածությունից ուսումնասիրվեց Մ., այնպես որ հետազոտման տարրեր դարձան ոչ թե 60—100 *կմ* չափերով (ինչպես նախկինում էր), այլ 1 *կմ*-ից էլ փոքր չափերով օբյեկտները: 1971-ին «Մարս-3» սովետական ավտոմատ միջմոլորակային կայանի իջեցվող ապարատը առաջին անգամ փափուկ վայրէջք կատարեց Մ-ի վրա: «Մարիներ» և «Մարս» ավտոմատ միջմոլորակային կայանների թռիչքները հնարավորություն են տալիս գործնական հետազոտություններ կատարել Մ-ի գեոմորֆոլոգիայի, երկրաբանության ու մակերևույթի էվոլյուցիայի և մթնոլորտի վերաբերյալ: Ստացված արդյունքները թույլ են տալիս ենթադրել, որ Մարսի վրա դիտվող մեծ խառնարանները Լուսնի խառնարաններից շատ ավելի երիտասարդ են, բայց ավելի քայքայված, որը, ըստ երևույթին, բացատրվում է հողմահարման պրոցեսներով:

*Բ. Թումանյան*

**Կյանքը Մարսի վրա:** Նախկինում շատ տարածված, Մ-ի՝ կենդանի (և նույնիսկ բանական) էակներով բնակեցված լինելու գաղափարը չի հաստատվում ջերմաստիճանային և սպեկտրոսկոպիական դիտարկումների արդյունքներով: Որքան էլ մեծ է միջավայրի պայմաններին կենդանի օրգանիզմների հարմարվողականությունը, այն փաստը, որ Մ-ի մթնոլորտում թթվածին չի հայտնաբերվել, այդ մոլորակի վրա կյանքի բարձրագույն ձևերի գոյության վարկածը դարձնում է անճշմարտանման: Սակայն կյանքի ցածրակարգ ձևեր, հատկապես, անաերոբներ այնտեղ կարող են գոյություն ունենալ: Ուլտրամանուշակագույն ճառագայթներով Մ-ի մակերևույթի ճառագայթումը միանգամայն հավանական է դարձնում օրգանական մոլեկուլների սինթեզը, որոնցից կազմված են կենդանի բջիջները: Լաբորատորիայում ստեղծված՝ Մ-ի մակերևույթին յուրահատուկ պայմաններում դրված երկրային միկրոօրգանիզմների բազմաթիվ ձևեր շարունակում են գոյություն ունենալ և բազմանալ:

*Գրկ.* Б р о н ш т э н В. А., Планета Марс, М., 1977.

**«ՄԱՐՍ»**, սովետական ավտոմատ միջմոլորակային կայանների անվանում: Արձակվել են 1962-ի նոյեմբ. 1-ից («Մարս-1») և նախատեսված էին Մարսի ու տիեզերական տարածության ուսումնասիրման համար: Մինչև 1980-ը արձակվել է 7 «Մ.»: «Մարս-2»-ի պատիճն առաջին անգամ հասել է Մարս, «Մարս-3» իջեցվող սարքը վայրէջք է կատարել Մարսի վրա (1971): 1973-ին, առաջին անգամ, միջմոլորակային ծրագծում միաժամանակ թռիչք են կատարել 4 «Մ.» («Մարս-4», «Մարս-5», «Մարս-6», «Մարս-7»): «Մարս-5»-ը Մարս մոլորակի սովետական 3-րդ արհեստական արբանյակն է: «Մարս-6»-ը հասել է Մարսի մակերևույթին:

**ՄԱՐՍԵԼ** (Marcel) Գաբրիել Օնորե(1889—1973), ֆրանսիացի փիլիսոփա, դրամատուրգ և գրաքննադատ, կաթոլիկական *էկզիստենցիալիզմի* հիմնադիրը: Մ. բարոյական և քաղաքական գիտությունների ակադեմիայի անդամ է (1952): Ավարտել է Սորբոնի համալսարանը: 1929-ին ընդունել է կաթոլիկություն: Մ-ի փիլիսոփայության ելակետը կեցության՝ առանձին մարդու գոյության պրոբլեմն է: Հաղթահարելով օբյեկտի և սուբյեկտի դուալիզմի՝ աշխարհի հետ ողջ հարաբերությունների ու աշխարհի էությունը հանգեցվում է անհատականին, որը համարվում է «գոյության» իսկական աշխարհ (էկզիստենցիալ փորձը՝ անհատի ներքին հոգևոր կյանքը) և հակադրվում տիրապետման անիսկական աշխարհին՝ օբյեկտների աշխարհին («Կեցություն և տիրապետում», 1935):

Մ. դրամաների («Պառակտված աշխարհը», 1933, «Ծարավ», 1938, «Հռոմը այլևս Հռոմում չէ», 1951 ևն) մեծամասնության հիմքում ընկած է կրոնաբարոյական կոնֆլիկտը: Մ-ի հասարակագիտական հայացքներին բնորոշ է միջնադարյան նախապետական հարաբերությունների իդեալականացումը: Հեղինակ է նաև թատրոնի, երաժշտության, գրաքննադատության հարցերին նվիրված աշխատությունների:

**ՄԱՐՍԵԼ** (Marseille), քաղաք Ֆրանսիայի հարավում, Միջերկրական ծովի Լիոնի ծոցի ափին: Հիմնադրվել է մ. թ. ա. VII դ.: Մեծությամբ երկրորդը (Փարիզից հետո) երկրում, Բուշ դյու Ռոն դեպարտամենտի վարչական կենտրոնը: 915 հզ. բն. (1978), ագլոմերացիայով՝ 1034 հզ.: Խոշորագույն նավահանգիստ է, երկաթուղային, ավտոմոբիլային և օդային ուղիների հանգույց: Երկրի արդ. առաջատար կենտրոններից է: Զարգացած են նավթավերամշակումը, նավթաքիմիան, մեքենաշինությունը (նավաշինություն, նավանորոգում, ավիաշինություն), քիմ., սննդի, շինանյութերի արդյունաբերությունը: Տուրիզմի կենտրոն է:

Հին քաղաքում պահպանվել են հռոմեական ամրությունների մնացորդներ, ռոմանոգոթական Սեն Վիկտոր (XI—XV դդ.) եկեղեցին և լա Մաժոր տաճարը (սկսվել է XII դ.), Հաղթակամարը (1825), Նոտր Դամ դը լա Գարդ բազիլիկը (էկլեկտիկա, 1864): Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո կառուցապատվել է Հին նավահանգստի շրջանը (1951): Կառույցներից են՝ բնակելի տուն (1947—52, ճարտ. Լը Կորբյուզիե), համալսարանի բժշկության և դեղագործության ֆակուլտետի շենքը (1959), զինվորական հոսպիտալը (1960—1963, ճարտ. Պ. Ֆորեստիե), 17—20-հարկանի տներ (1965): 1960-ական թթ. վերջին կառուցվել են կենտրոնական զբոսայգու անսամբլը (ճարտ. Պ. Ժամյո), Ֆոս ծովածոցի նավահանգիստը (ճարտ. Գ. Ժոբեր): Ունի գիտությունների և արվեստի ակադեմիաներ, համալսարան, կոնսերվատորիա, թանգարաններ, ակվարիում, կենդանաբանական և բուսաբանական այգիներ: Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ Դիմադրության շարժման խոշոր կենտրոններից էր:



Տեսարան Մարսելից

Հ ա յ ե ր ը Մ ա ր ս ե լ ու մ: Մ-ում բնակություն հաստատած առաջին հայերը վաճառականներ էին: XVI դ., երբ Մ. դարձել էր միջազգային առևտրի խոշոր կենտրոն, այստեղ լայն գործունեություն են ծավալել նաև հայ վաճառականները: Տեղացի վաճառականների դրդմամբ ֆրանս. իշխանությունները սահմանափակել, ապա արգելել են հայ վաճառականների մուտքը Ֆրանսիա, որ տևել է մինչև 1660-ը, երբ արտոնվել է Ջենովայի և Լիվոռնոյի հայերին փոխադրվել Մ.: 1669-ին Մ. հռչակվել է ազատ նավահանգիստ և բոլոր ազգությունների վաճառականներին արտոնվել է առևտրի և նաև ֆրանս. քաղաքացիության իրավունք: Այս պատեհությունից օգտվել են նաև հայերը. Արևելյան Հայաստանից Մ. են փոխադրվել բրդի, շերամի առևտրով զբաղվողներ: XIX դ. վերջին, երբ որոշվել է հայկ. թեմ ստեղծել Եվրոպայում, թեմական կենտրոն է ընտրվել Մ.: 1673-ին Ոսկան Երևանցին Մ-ում հիմնել է տպարան, որտեղ տպագրվել են հայերեն գրքեր: 1885—1923-ին Մ-ում լույս է տեսել *«Արմենիա»* լրագիրը: Հիմնադրվել է *Հայոց հայրենասիրական միությունը*: Մ-ի հայ համայնքը ստվարացել է առաջին համաշխարհային պատերազմից հետո, երբ թույլատրվել է օտարերկրացիների ազատ մուտքը Ֆրանսիա, Մ-ում ստեղծվել է «Հայ գաղթականների օգնության կոմիտե», որը զբաղվել է հայերի տեղավորման գործով: 1927-ին կազմվել է Մ-ի հայկ. առաջնորդական թեմը, ընտրվել է գաղության վարչություն, որի խնդիրն էր մանուկների հայեցի դաստիարակությունը, եկեղեցիների պահպանությունն ու նրանց կից դպրոցների հսկողությունը: Գործել են ազգային կուսակցությունների մասնաճյուղերը, ՀՕԿ-ի մասնաճյուղը: Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին (1939—45) Մ-ի հայերը մասնակցել են պարտիզանական կռիվներին և գերմ. զավթիչներից Մ-ի ազատագրմանը: 1942—48-ին գործել է *Հայ ազգային ճակատը*, որի լուծարքից հետո

հիմնվել է *Ֆրանսահայ մշակութային միությունը*: 1980-ին Մ-ում հաշվվում էր շուրջ 70 հզ. հայ (արհեստավորներ, բանվորներ, մտավորականներ): Գործում են երեք եկեղեցի (այդ թվում՝ Ս. Սահակ մայր եկեղեցին), որոնց կից՝ մեկօրյա դպրոցներ, հայրենակցական, մշակութային և մարզական կազմակերպություններ, ՀԲԸՄ (1910-ից) և *Ֆրանսահայ երիտասարդական միության* (ՃԱՖ) Մ-ի մասնաճյուղերը, Հայ ուսանողական կենտրոնը և Պատերազմի վետերանների միությունը: Մ-ում լույս են տեսել «Խթան» (1915—35), «Հայ սիրտ» (1925—38), «Հաճըն» (1929—1940), «Ժողովրդի ձայն» (1936—38), «Նոր կյանք» (1944—47) են պարբերականները: Տես նաև *Ֆրանսիա*, Հ ա յ ե ր ը Ֆ ր ա ն ս ի ա յ ո ւ մ մասը: *Պ. Մարտիրոսյան*

**«ՄԱՐՍԵԼ ԴԱՍՈ»**, ֆրանսիական ավիաինքնաթիռաշինական ընկերություն: Տես *Մոնոպոլիա կապիտալիստական* հոդվածի Արդյունաբերական մոնոպոլիաներ բաժինը:

**ՄԱՐՍԵԼԱԽԱՆԳԱՐՈՒՄ**, դիսպեպսիա (< հուն. δύσπεπτος — դժվարամարսելիություն), ստամոքսա-աղիքային համակարգի ֆունկցիոնալ խանգարումներ: Պատճառը սննդի քանակի և որակի նկատմամբ օրգանիզմի պահանջների և այդ սննդանյութը մարսողական օրգանների (տես *Մարսողական համակարգ*) բնականոն քանակությամբ ֆերմենտներով մարսելու (տես *Մարսողություն*) հնարավորության անհամապատասխանությունն է: Առավել հաճախ հանդիպում է մինչև 8—9 ամսական երեխաների մոտ: «Մ.» տերմինն առաջարկել է վիեննացի մանկաբույժ Հ. Վիդերհոֆերը, XIX դ. վերջում: Ներքին հիվանդությունների կլինիկայում Մ. նույնացվում է մի շարք հիվանդությունների ընթացքում առաջացած ստամոքսաաղիքային տարբեր խանգարումների հետ: Մանկաբուժության մեջ տարբերում են Մ-ման կլինիկական հետևյալ ձևերը՝ հասարակ, թունավոր և հարաղիքային (պարէնտերալ): Առաջին երկուսն առաջանում են կրծքի երեխայի կերակրման կանոնների խախտման, իսկ հարաղիքայինը՝ սուր հիվանդությունների (թոքաբորբ, բրոնխիտ, միջին ականջի բորբոքում են) հետևանքով: Նշված բոլոր դեպքերում երեխան դառնում է անհանգիստ. որովայնը փքվում է, ախորժակը վատանում, առաջանում են փսխումներ, կղանքը դառնում է հաճախակի (օրական մինչև 10 անգամ): Օրգանիզմի ջրազրկման հետևանքով երեխայի քաշը խիստ պակասում է: Թունավոր Մ-ման ընթացքը առավել ծանր է, ի հայտ են գալիս սիրտ-անոթային և նյարդային համակարգերի, նյութափոխանակության և ծայրամասային արյան շրջանառության խանգարումներ: Թունավորման հարաճուն ընթացքի դեպքում կարող են զարգանալ կոլապս և կոմա: Բ ու ժ ո ւ մ ը. հասարակ Մ.՝ սննդի ռեժիմի կարգավորում, դյուրամարս դիետա, *ստամոքսի* շարժողությունն ու հյութազատությունը կարգավորող միջոցներ (աղաթթու՝ պեպսինի հետ, պանկրեատին), B, C խմբի վիտամիններ: Թունավոր Մ.՝ ստացիոնար պայմաններում. սիրտ-անոթային համակարգի գործունեությունը լավացնող միջոցներ (սրտային գլիկոզիդներ, կոկարբոքսիլազ), արյանը փոխարինող հեղուկներ: Հարաղիքային Մ-ման դեպքում՝ հիմնական հիվանդության բուժում:

**ՄԱՐՍԵԼԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՏՊԱԳՐՈՒԹՅՈՒՆ**, հայերեն տպագիր երկերի հրատարակություն Մարսել քաղաքում՝ XVII և XIX—XX դդ.: 1673-ին *Ոսկան Երևանցին*, ֆրանս. արքունիքից թույլտվություն ստանալով, Ս. Էջմիածնի և Ս. Սարգսի անվ. տպարան-հրատարակչությունը Լիվոռնոյից փոխադրել է Մարսել: Մարսելի տպարանի մյուս աշխատողներն էին Սողոմոն *Լեոնյանը* (Ոսկանի քեռորդին), *Մատթեոս Վանանդեցի* Հովհաննիսյանը, Մկրտիչ Ջուղայեցին, Թադեոս Երևանցի Համազասպյանը, Նասիբ Գրիգորյանը: Նույն՝ 1673-ին Ոսկանն սկսում է տպագրել Գրիգոր Նարեկացու «Գիրք աղօթից»-ը («Մատեան ողբերգութեան»), «Գիրք ժամակարգութեան որ կոչի Ատենի» կամ «Ժամագիրք Ատենի» (երկուսն էլ առաջին հրտ.) և «Գիրք Սաղմոսաց Դաւթի»: Կաթոլիկական գրաքննության պատճառով Նարեկացու երկի տպագրությունը մնում է անավարտ, իսկ ժամագրքինը ավարտվում է 1679-ին: Տպարանը հրատարակում էր նաև աշխարհիկ գրքեր, որոնցից են «Գրկուկ կարեւոր հանապազորդեան» (Պարզատոմար, Լուսնացոյց են, 1673), «Գիրք այբուբենից» (1675), «Գրգուկ կարեւոր հանապազորդեան» (1676), «Գիրք աշխարհաց և առասպելաբանութեանց, որ է Աղուէսագիրք» (Մովսես Խորենացուն վերագրվող «Աշխարհացոյց»-ը և Վարդան Այգեկցու առակները, 2-րդ հրտ., 1683) են: Տպարանը 1675-ին լույս է ընծայում առաջին աշխարհաբար գիրքը՝ «Արհեստ համարողութեան», որ թվաբանական-հաշվապահական ձեռնարկ է հայ վաճառականների համար: Այստեղ է հրատարակվել Հովհաննես Հոլովի «Համառօտութիւն ճարտասանականին արհեստի» երկը (1674): Տպարանը փակվել է 1686-ին՝ 13 տարվա ընթացքում հրատարակելով 16 անուն հայերեն գիրք:



Մարսելի հայկական տպագրության հրատարակություններից

Մարսելում հայկ. տպագրությունը վերսկսվել է 1862-ին, երբ Ճ. *Արամյանը* իր տպարանը Փարիզից Կ. Պոլիս փոխադրելիս 2 տարով հանգրվանել է այդ քաղաքում և զբաղվել գրահրատարակությամբ: 1885-ից Մարսելում հրատարակչական-տպագրական գործունեություն է ծավալել Մ. Փորթուգալյանը, որը նախ ֆրանս., ապա սեփական տպարանում լույս է ընծայել գլխավորապես ազգային-ազատագրական բովանդակությամբ գրքեր և «Արմենիա» գրական-բանասիրական քաղ. թերթը: Փորթուգալյանի տպարանում աշխատել են հայազգի առաջին կին գրաշարներ Շուշանը և Հայկանուշը (Փորթուգալյանի դուստրերը): Մինչև 1967-ը Մարսելում գործել է մոտ 10 հայկ. տպարան. դրանցում, ինչպես և տեղի ֆրանս. տպարաններում հայերեն գրքերից բացի տպագրվել են շուրջ 30 անուն հայերեն պարբերականներ, այդ թվում՝ «Խթան», «Բանբեր», «Գեղարդ», «Ազատ խոսք», «Վերելք»:

Գրկ. Զ ա ր բ հ ա ն ա լ յ ա ն Գ., Պատմություն հայկական տպագրության, Վնտ., 1895: Թ ե ո դ ի կ, Տիպ ու տառ, ԿՊ, 1912: Լ ե ո ն յ ա ն Գ., Հայ գիրքը և տպագրության արվեստը, Ե., 1958: Ի շ խ ա ն յ ա ն Ռ., Հայ գրքի պատմություն, հ. 1, Ե., 1977:

*Ռ. Իշխանյան*

**«ՄԱՐՍԵԼՅԵԶ»** («Marseillaise»), ֆրանսիական հեղափոխական երգ, Ֆրանսիայի պետական հիմնը: Խոսքերը և երաժշտությունը գրել է Կ. *Ժ. Ռուժե դը Լիլը*՝ 1792-ին, Ստրասբուրգում: Սկզբնապես կոչվել է «Ռեյնոսյան բանակի մարտական երգ»: Արագորեն մասսայականանալով հանրապետական բանակում՝ տարածվել է Մարսելում, հետո Փարիզում հայտնի դարձել «Մարսելցիների քայլերգ» (կրճատ՝ «Մ.») անունով: Ռեստավրացիայի և Երկրորդ կայսրության շրջանում արգելված «Մ.» հաստատվել է որպես Երրորդ հանրապետության պետ. հիմն: Երաժշտական տեքստը պաշտոնապես հաստատվել է 1887-ին: XIX դ. 80—90-ական թթ. Ռուսաստանի բանվորների և մտավորականության շրջանում Մ-ի եղանակով երգվել է «Հրաժարվենք հին աշխարհից» հեղափոխական երգը, որը կոչվել է «Բանվորական մարսելյեզ» (խոսքերը՝ Պ. Լ. Լավրովի):

**ՄԱՐՍՅԱՆ ԴԱՇՏ** (Campus Marsius), դաշտ Հին Հռոմում, Տիբեր գետի ձախ ափին: Անունը տրվել է ի պատիվ պատերազմի աստված *Մարսի*: Մ. դ-ում սկզբնապես տեղի են ունեցել զորահանդեսներ և մրցումներ, այստեղ էր Մարսի զոհասեղանը: Հանրապետության ժամանակաշրջանում Մ. դ-ում անցկացվել են ժող. ժողովներ (ցենտուրիական կոմիցիաներ): Հետագայում Մ. դ-ի զգալի մասը կառուցապատվել է, և Մ. դ. անվանել են միայն զոհասեղանի շուրջ գտնվող հրապարակը:

Հետագայում Մ. դ. են անվանվել հրապարակներ Փարիզում, Լենինգրադում և այլուր:

**ՄԱՐՍՈ** (Marceau) Մարսել (ծն. 1923, Ստրասբուր), ֆրանսիացի դերասան-միմոս: Ռեժիսոր Շ. Դյուլլենի և դերասան Է. Դեկրուի աշակերտը: 1947-ին կազմակերպել է «Միմոսների համագործակցություն» սեփական թատերախումբը: Ստեղծել է միամիտ, կյանքն ու մարդկանց սիրող Բիպի քնարական կերպարը: Լավա-



Մ. Մարսոն ելույթի պահին

գույն աշխատանքներից են՝ «Շինել» (ըստ Ն. Գոգոլի), «Փարիզն արտասվում է, Փարիզը ծիծաղում» պանտոմիմները, «Պատանեկություն, հասունություն, ծերություն, մահ», «Դիմակների արվեստանոցում» մանրապատումները: Զարգացրել է XIX դ. նշանավոր միմոս Ժ. Բ. Գ. Դեբյուրոյի արվեստի ավանդույթները: 1960-ին Մ-ի թատերախումբը ցրվել է. նա հիմնականում հանդես է գալիս այլ երկրներում: Հյուրախաղերով այցելել է ՍՍՀՄ, ելույթ ունեցել նաև Երևանում:

*Գրկ.* Бояджиев Г., Театральный Париж сегодня, М., 1960.

**ՄԱՐՍՈՂԱԿԱՆ ՀԱՄԱԿԱՐԳ**, մարսողական ապարատ, կենդանիների և մարդու մարսողական օրգանների ամբողջությունը: Իրականացնում է սննդի մեխանիկական և քիմ. մշակումը, սննդանյութերի ներծծումը, կղանքի ձևավորումը և հեռացումը, օրգանիզմն ապահովում անհրաժեշտ էներգիայով ու կառուցվածքային նյութերով: Ցածրակարգ կենդանիները Մ. հ. չունեն: Նախակենդանիներին բնորոշ է ներբջջային մարսողությունը, իսկ պարզագույն բազմաբջիջ օրգանիզմներն ունեն հատուկ մարսողական բջիջներ: Աղեխորշավորների ստամոքսային խոռոչը և տափակ որդերի առաջնաղին ու ետնաղին արտաքին աշխարհի հետ հաղորդակցվում են միայն բերանային անցքով: Մնացած անողնաշարավորներին հատուկ է հետանցքով վերջացող ետնաղին: Փափկամորթներն ունեն ըմպան, եղջրային ծնոտներ, թքագեղձեր, ստամոքս՝ խոշոր մարսողական գեղձով (լյարդ): Գլխոտանիներն ունեն նաև ենթաստամոքսային գեղձ, բազմաթիվ հոդվածոտանիներ՝ մալպիգյան անոթներ: Կենդանիների որոշ խմբերի (կետանմաններ, որոճող կաթնասուններ, թռչուններ, որոշ ձկներ) հատուկ է բարդ ստամոքսը: Ողնաշարավորների մեծամասնության աղիքները տարբերակված են մորֆոլոգիապես և գործունեությամբ տարբերվող բաժինների: Մարդու Մ. հ. կազմված է մարսողական խողովակից և մարսողական գեղձերից: Մարսողական խողովակը սկսվում է բերանի ճեղքով և վերջանում հետանցքով: Երկարությունը 8—10 *մ* է, ստորաբաժանվում է հատվածների՝ բերանի խոռոչ, *ըմպան*, *կերակրափող*, *ստամոքս*, բարակ և հաստ *աղիքներ*: Այդ խողովակը զետեղված է դիմային գանգում, պարանոցի շրջանում, կրծքի, որովայնի ու կոնքի խոռոչներում: Առաջին երեք բաժինների ընթացքը գրեթե ուղղաձիգ է, իսկ մյուսները կազմում են գալարներ և ծնկեր: Մարսողական խողովակի պատերը, բացի գլխային հատվածից, ուր կան նաև կմախքի տարրեր (ոսկր, աճառ), կազմված են երեք շերտից. արտաքին՝ շճաթաղանթային, որը կատարում է պաշտպանական ֆունկցիա, ներքին՝ լորձաթաղանթային, որի փուխր շարակցահյուսվածքային հենքում ճյուղավորվում են արյան, ավշային անոթները և նյարդերը, միջին՝ մկանային, որի գալարակծկանքային շարժումների շնորհիվ սնունդը փոխադրվում է օրգանից օրգան (տես *Մարսողություն*): Միայն ըմպանի և կերակրափողի արտաքին շերտը կազմված է շարակցական հյուսվածքից: Մարսողական գեղձերն են. *թքագեղձերը*, *լյարդը*, *ենթաստամոքսային գեղձը*, բացի այդ, մարսողական խողովակի պատերի լորձաթաղանթում և ենթալորձային հյուսվածքում գտնվող մանր գեղձերը, որոնց ծորաններով ֆերմենտ պարունակող գեղձահյութը (ստամոքսահյութ, աղիքահյութ, թուք, լորձ, լեղի) արտազատվում է մարսողական խողովակի տարբեր հատվածների մեջ և նպաստում սննդանյութերի քիմ. մշակմանը:




Մարդու մարսողական համակարգը. *1.* կերակրափող, 2. ստամոքս, *3.* ենթաստամոքսային գեղձ, *4.* լյարդ, *5.* լեղապարկ, 6. 12-մատնյա աղիք, 7. բարակ աղիք, 8. հաստ աղիք, *9.* կույր աղիք, *10.* ուղիղ աղիք

**ՄԱՐՍՈՂԱԿԱՆ ՕՐԳԱՆՆԵՐ**, ներքին օրգաններ (բերանի խոռոչ, *ըմպան*, *կերակրափող*, *ստամոքս*, բարակ և հաստ *աղիքներ*), որոնք կազմում են *մարսողական համակարգը* և մասնակցում *մարսողությանը*:

**ՄԱՐՍՈՂՈՒԹՅՈՒՆ**, սննդանյութերի մշակման, ներծծման և յուրացման բարդ ֆիզիոլոգիական պրոցես: Տարբերում են 3 հիմնական տեսակ՝ ներբջջային, արտաբջջային և առպատային (թաղանթային): Ներբջջային Մ. տեղի է ունենում բջջի ներսում, որտեղ կիսաճեղքված կամ չճեղքված սննդանյութերը ենթարկվում են ջրատարրալուծման (հիդրոլիզ): Բնորոշ է բոլոր միաբջիջներին, սակայն հանդիպում է նաև բարձրակարգ կենդանիների մոտ (արյան սպիտակ գնդիկների ֆագոցիտոզ, պինոցիտոզ): Արտաբջջային Մ., բջջում սինթեզված ֆերմենտները դուրս են գալիս մարսողական ուղու խոռոչների մեջ և ազդում հեռավորության վրա: Այս ձևը հատուկ է օղակավոր որդերին, միջատներին, գլխոտանիներին, քորդավորներին: Բարձրակարգ կենդանիների մեծամասնության (օրինակ՝ կաթնասունների) հյութազատող գեղձերը (օրինակ թքագեղձեր, ենթաստամոքսային գեղձ) հեռու են տեղադրված ստամոքսից և աղիներից: Առպատային Մ. կատարվում է բջջաթաղանթի վրա եղած գոյացություններին արտադրած ֆերմենտների միջոցով և միջանկյալ դիրք է գրավում արտաբջջային ու ներբջջային Մ-ների միջև: Բարձրակարգ կենդանիների օրգանիզմներում առպատային Մ. տեղի է ունենում աղիների պատերի վրա, այսինքն՝ սննդանյութերի վերջնական տարրալուծումը կատարվում է այն նույն մակերեսին, որն իրականացնում է *ներծծման* պրոցեսը (Ա. Ուգոլև): Մ-յան նշված տեսակը հատուկ է մարդուն, բարձրակարգ կենդանիներին, բազմաթիվ անողնաշարավորների (միջատներ, փափկամարմիններ, որդեր ևն): Մ. իրականացվում է մարսողական օրգաններում: Սննդանյութերը ենթարկվում են ֆիզիկական՝ մանրացվում են, շաղախվում մարսողական հյութերով, լուծվում, և քիմ. մշակման՝ զանազան ֆերմենտների միջոցով օրգ. բարդ միացությունները (սպիտակուցներ, ճարպեր, ածխաջրեր) վերածվում են պարզ միացությունների, որոնք ընդունակ են ներծծվելու արյան կամ ավիշի մեջ: Մարսողական ֆերմենտները բաժանվում են 3 խմբի՝ պրոտեազներ, լիպազներ և կարբոհիդրազներ, որոնք համապատասխանաբար տարրալուծում են սպիտակուցները, ճարպերը և ածխաջրերը: Վերջիններիս տարրալուծումը սկսվում է բերանի խոռոչում, թքի մեջ պարունակվող ֆերմենտների օգնությամբ (ամիլազ, մալթազ) և շարունակվում 12-մատնյա ու բարակ աղիքներում (ամիլազ, մալթազ, ինվերտազ, լակտազ): Ի վերջո բարդ ածխաջրերը վերածվում են միաշաքարների և ներծծվում արյան մեջ: Սպիտակուցները ճեղքվում են ստամոքսում աղաթթվի ներկայությամբ (ֆերմենտներ՝ պեպսին, ժելատինազ ևն), 12-մատնյա աղիքում (տրիպսին, կարբօքսիպոլիպեպտիդազ ևն) և բարակ աղիքներում (ամինոպոլիպեպտիդազ, դիպեպտիդազ), վերածվում են ամինաթթուների և անցնում արյան մեջ: Ճարպերը ստամոքսում, 12-մատնյա աղիքում և մասամբ բարակ աղիքներում, լիպազ ֆերմենտի միջոցով տարրալուծվում են մինչև գլիցերինի և ճարպաթթուների, որոնք աղիքի պատով անցնում են ավիշի մեջ: Ճարպերի տարրալուծման մեջ կարևոր դեր է կատարում *լեղին*: Ենթաստամոքսային գեղձը արտադրում է մի շարք ֆերմենտներ (տրիպսին, ամինոպոլիպեպտիդազ, լիպազ, նուկլեազ ևն), որոնք գեղձի ծորանով արտաբերվում են 12-մատնյա աղիք և ազդում սննդանյութերի վրա: Վերջիններիս չմարսված և չներծծված մասերը անցնում են հաստ աղիք, որտեղ հիմնականում ներծծվում է ջուրը և ձևավորվում կղանքը: Մ-յան համակարգի ինչպես հյութազատական, այնպես էլ շարժական ու ներծծող ֆունկցիաները կարգավորվում են բարդ ռեֆլեքսային և հումորալ ճանապարհով և իրականացվում թափառող ու ընդերային (սիմպաթիկ) նյարդերի միջոցով: Տես նաև *Մարսողական համակարգ*. *Վ. Գրիգորյան*

**ՄԱՐՏ**, պատերազմող կողմերի ստորաբաժանումների, զորամասերի և միավորում-

ների (ինքնաթիռների, նավերի) կազմակերպված ռազմական ընդհարումը: Նպատակն է՝ հակառակորդի ոչնչացումը, ջախջախումը կամ գերեվարումը, ինչպես նաև կարևոր շրջանների (բնագծերի) գրավումը: Մարտավարության ձևերն ու եղանակները փոփոխվել են՝ կապված մարտական տեխնիկայի և զորքի որակական կազմի փոփոխության հետ: Մ. լինում է համազորային, օդային և ծովային: 1. Ցամաքային զորքերի ժամանակակից Մ. համազորային է, որին մասնակցում են բոլոր զորատեսակներն ու հատուկ զորատեսակները, ռազմաօդային և ռազմածովային (ծովափնյա ուղղություններում) ուժերի համագործակցությամբ և զենքի տարբեր տեսակների գործադրմամբ: Մ-երը լինում են հարձակողական և պաշտպանողական: 2. Օդային Մ. զինված հակամարտությունն է օդում, միայնակ ինքնաթիռների (ուղղաթիռների) կամ խմբերի (ստորաբաժանումների, օդակների) միջև՝ թշնամուն ոչնչացնելու կամ հարձակումը կասեցնելու համար: Օդային Մ. կործանիչ ավիացիայի գործողությունների հիմնական տեսակն է օդում տիրապետություն ձեռք բերելու համար: 3. Ծովային Մ. պատերազմող կողմերի նավատորմերի միավորումների (զորամասերի, նավերի) կազմակերպված ռազմ. գործողություններն են հարվածի տարբեր միջոցների կիրառմամբ: Մղվում է բաց ծովում (օվկիանոսում) կամ մերձափնյա շրջաններում՝ հակառակորդի նավատորմի ուժերը ոչնչացնելու կամ դրանց կործանիչ հարված հասցնելու նպատակով: Բաղկացած է փոխադարձ գրոհներից, հակագրոհներից և դրանց կասեցումից: Ծովային Մ-ի տարատեսակներից են ծովային դեսանտի ափհանման և ափամերձ շրջաններում հարձակվող ցամաքային զորքերին օգնելու նպատակով ձեռնարկված Մ-երը:

**«ՄԱՐՏ»**, քաղաքական ամսաթերթ: Վերակազմյալ հնչակյան կուսակցության պաշտոնական հրատարակություն: Լույս է տեսել 1897—1901-ին, Լոնդոնում: Խմբագիր՝ Ա. Արփիարյան: Նպատակն էր միավորել արևմտահայ ազգային-ազատագրական շարժման ուժերը: Հրատարակել է 1894—96-ի հայկ.ջարդերին և ինքնապաշտպանական կռիվներին վերաբերող նյութեր, քննադատել եվրոպական տերությունների դիրքորոշումը հայկ. հարցի նկատմամբ, անդրադարձել հայ-ռուսական քաղ. հարաբերություններին: Լուսաբանել է Կ. Պոլսի հայ ազգային և կրոնական մարմինների գործունեությունը, արևմտահայության ինքնորոշման հարցում երիտթուրքերի գրաված բացասական դիրքը:

*Գ. Գույումջյան*

**«ՄԱՐՏ»**, գրական, քաղաքական և հասարակական պատկերազարդ հրատարակություն: Լույս է տեսել 1911—16-ին, Մոսկվայում, անկանոն պարբերականությամբ (երկշաբաթաթերթ, կիսամսյա, ամսաթերթ): Խմբագիր-հրատարակիչ՝ Ա. Թումանյան (Կայծունի): Տպագրել է տեղեկություններ Հայաստանի, Կովկասի, Ռուսաստանի ներքին կյանքի վերաբերյալ: Հրատարակել է նաև նյութեր գրականության տեսության վերաբերյալ, գեղարվեստական ստեղծագործություններ, թարգմանական գործեր: Քննադատել է հայ մեծահարուստներին, եկեղեցու գործիչներին՝ ազգային կարիքների հանդեպ անտարբեր վերաբերմունքի համար:

**ՄԱՐՏԱԿԱՆ ԹՈՒՆԱՎՈՐ ՆՅՈՒԹԵՐ**, տես *Թունավոր նյութեր:*

**ՄԱՐՏԱԿԱՌՔ**, ռազմակառք, հատկապես ռազմական նպատակներով օգտագործվող երկանիվ կամ քառանիվ մարդատար թեթև կառք: Մ-ին լծում էին մեկ կամ մեկ-երկու և ավելի զույգ ձի (մասամբ՝ նաև ջորի): Ռազմիկի պաշտպանության նպատակով Մ. առջևից և կողերից պատվում էր 0,5 *մ* կամ ավելի բարձր թափքակողերով: Մ-ում տեղավորվում էին հիմնականում ռազմիկը և կառավարը: Մ-ի թափքում ամրացվում-պահվում էին կապարճը, նիզակը և անհրաժեշտ այլ զենքեր: Հին աշխարհի զորամասերում Մ-երի ռազմիկները կազմում էին հատուկ



Ասուրական մարտակառք՝ ծանրազեն մարտիկներով (Աշուրբանիպալի պալատի բարձրաքանդակ, Նինվե, մ. թ. ա. VII դ.)

ջոկատներ, որոնք գործում էին հետևազորի առջևից կամ թևերից: Մ-երի ջոկատների հարվածը խառնաշփոթություն էր ստեղծում հակառակորդի շարքերում՝ հետևակազորի համար ստեղծելով հակառակորդին ջախջախելու պայմաններ: Մ-երն օգտագործվում էին նաև հաղթական կամ հանդիսավոր շքահանդեսներում ու մարզական մրցույթներում: Սկսած III հազարամյակից Հին Արևելքում (Շումեր, Եգիպտոս, Ասորեստան, Պարսկաստան, Անդրկովկաս, Չինաստան, Հնդկաստան), Հռոմում և Հունաստանում բազմապիսի Մ-երի լայնորեն տարածվածության մասին են վկայում ինչպես պեղածոները (կառքերի մնացորդներ, կավե և բրոնզե մոդելներ, բարձրաքանդակներ, որմնանկարներ ևն), այնպես էլ սեպագրերն ու գրավոր այլ աղբյուրները (Հոմերոս ևն): Հայկական լեռնաշխարհում (Լճաշեն, Թոփրակ կալե, Կարմիր բլուր, Էրեբունի, Ախթալա, Ստեփանավան, Դիլիջան ևն) Մ-երի նույնպիսի պեղածոներ են հայտնաբերվել նաև նախաուրարտական և ուրարտ. ժամանակաշրջաններին (մ. թ. ա. XIV—VII դդ.) վերաբերող դամբարաններում: Արդեն մ. թ. ա. I հազարամյակի սկզբներից ռազմավարության մեջ, որպես առավել ճկուն ու հարվածային զորատեսակ, առաջնակարգ դիրք է գրավում հեծելազորը (այրուձին)՝ աստիճանաբար փոխարինելով Մ-երի ջոկատներին:

*Գրկ.* Пиотровский Б. Б., Урартская колесница, в сб.: «Древний мир», М., 1962; Есаян С. А., Оружие и военное дело древней Армении (III—I тыс. до н. э.), Е., 1966.

*Լ. Պետրոսյան*

**ՄԱՐՏԱԿԵՐՏ**, քաղաքատիպ ավան, Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտակերտի շրջանի կենտրոնը, Ստեփանակերտից 62 *կմ* հյուսիս-արևելք: Մ-ում կան շինանյութերի կոմբինատ, փայտասղոցման, յուղի-պանրի, խաղողի նախնական վերամշակման գործարաններ, ինկուբատորաթռչնաբուծական կայան, շերամի սերմնամթերման կետ: Խաղողագործ. սովետական տնտեսությունն զբաղվում է նաև անասնապահությամբ, բանջարաբոստանային կուլտուրաների մշակությամբ: Ունի 2 միջնակարգ, գիշերօթիկ, երեկոյան, երաժշտական դպրոցներ, պրոֆտեխնիկական ուսումնարան, գրադարան, կինո, կապի բաժանմունք, 2 մանկապարտեզ, հիվանդանոց, կենցաղսպասարկման կոմբինատ: Մ-ում է հրատարակվում շրջանային «Բարեկամություն» լրագիրը: Ավանի հս-ում է «Կռապաշտի հանգըստարան» գերեզմանոցը (III—IV դդ.), Ս. Կարապետ եկեղեցին (կիսավեր, XIII—XVIII դդ.), շրջակայքում պահպանվել են տապանագրերով 2 գերեզմանոց, գյուղատեղիներ, 2 եկեղեցի (XIII—XV դդ.): Մ-ում է ծնվել Սովետական Միության հերոս Թ. Հ. Ավթանդիլյանը:

**«ՄԱՐՏԱԿՈՉ»**, օրաթերթ: Ռուսաստանի կոմկուսի Անդրկովկասյան երկրամասային կոմիտեի օրգան: Լույս է տեսել 1923—1927-ին, Թիֆլիսում: Խմբագիրներ՝ Ա. Մյասնիկյան, Հ. Սուրխաթյան, Ա. Խումարյան, Ա. Երզնկյան, Ս. Խանոյան: Պայքարել է սովետական կարգերի ամրապնդման համար, աշխատավորությանը համախմբել կոմունիստական կուսակցության շուրջը, քննադատել մենշևիկյան և բուրժուական այլ կուսակցությունների գաղափարախոսությունը: Ծանոթացրել է մարքսիզմ-լենինիզմի դասականների աշխատություններին: Մեծ ուշադրություն է նվիրել Անդրկովկասի և միութենական

ՄԱՐՏԱԿՈՉ

մյուս հանրապետությունների արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման հարցերին, կարևորել աշխատավորության գեղագիտական դաստիարակությունն ու անգրագիտության վերացումը: Ներկայացրել է երկրամասի մշակութային կյանքի վերելքն ու գրականության և արվեստի նորությունները: Թերթում հոդվածներով և այլ նյութերով հանդես են եկել կուսակցական և պետ. գործիչներ, գիտնականներ, աշխատավորության ներկայացուցիչներ: Տպագրել է Հ. Թումանյանի, Ա. Իսահակյանի, Հ. Հակոբյանի, Ե. Չարենցի և ուրիշների ստեղծագործությունները: «Մ.»-ին զուգահեռ՝ որպես գրական-գեղարվեստական հավելված, լույս է տեսել նույնանուն շաբաթական պատկերազարդ հանդեսը (խմբա-

գիր՝ Հ. Սուրխաթյան), ուր լուսաբանվել են գրականության ու արվեստի տեսական հարցեր, պարբերաբար տպագրվել հայ սովետական հեղինակների նոր գործերը, թարգմանություններ ՍՍՀՄ ժողովուրդների գրականությունից: «Մ.»-ին նախորդել է «Կարմիր աստղ» (1920—23) թերթը, հաջորդել՝ «Պրոլետարը» (1927—1938):

*Վ. Մաղալյան*

**ՄԱՐՏԱՆԿԱՐՉՈՒԹՅՈՒՆ**, ռազմապատկերում, պատերազմ և ռազմական կյանք պատկերող կերպարվեստի ժանր: Ճակատամարտի տեսարանները (մասնավորապես՝ ծովային) և մեր օրերի ու անցյալի ռազմ. արշավանքները Մ-յան հիմնական թեմատիկան են: Մ. արտացոլում է ճակատամարտի կարևորագույն կամ նրա բնորոշ պահը, հերոսականությունը, բացահայտում ռազմ. իրադարձության պատմական նշանակությունը, որի պատճառով Մ. մերձենում է *պատմական ժանրին*: Բանակի և ռազմածովային նավատորմի հետ մարտանկարչի ունեցած կապը նպաստում է ժանրի սահմանների լայնացմանը, դրա մեջ ներգրավում զինվորական կենցաղի տեսարաններ (տես *Կենցաղային ժանր*): XIX—XX դդ. Մ. ռեալիստորեն է բացահայտում պատերազմների սոցիալական էությունը, մերկացնում անարդարացի պատերազմները, փառաբանում հեղափոխության և ազատագրական կռիվներում ժողովրդի հերոսությունը, դիտողին դաստիարակում քաղաքացիական ոգով:

Մ. ձևավորվել է XVI—XVII դդ., սակայն մարտի տեսարաններ պատկերվել են դեռ հնագույն ժամանակներից: Հին Արևելքի, Հունաստանի, Հայաստանի, Հռոմի, Չինաստանի, Եվրոպայի վաղ միջնադարյան արվեստներում կռվի, ճակատամարտի, ռազմերթի տեսարաններ պատկերվել են քանդակագործական, գեղանկարչական ու գրաֆիկական միջոցներով: Մարտի ռեալիստական պատկերման առաջին փորձերը վերագրվում են իտալական Վերածննդի դարաշրջանին (Պաոլո Ուչչելո, Պիեռո դելա Ֆրանչեսկա, XV դ., Լեոնարդո դա Վինչի, Միքելանջելո, XVI դ.): XVII դ. Մ. հարստացրել են Ժ. Կալլոն (Ֆրանսիա), Դ. Վելասկեզը (Իսպանիա), Պ. Ռուբենսը (Բելգիա): Ֆրանսիական մեծ հեղափոխությունը և Նապոլեոնի արշավանքները դարձել են Ա. Գրոյի մեծաչափ մարտանկարների թեման: XIX դ. վերջին և XX դ. սկզբին ռեալիզմի զարգացումը նպաստել է բնանկարային, ժանրային, հոգեբանական տարրերի ուժեղացմանը Մ-ում: Ռուսաստանում բնանկարչության և կենցաղային ժանրի զարգացման հետ մեկտեղ ստեղծվել են ծովամարտ պատկերող նկարներ (Հ. Կ. Այվազովսկի, Ա. Պ. Բոգոլյուբով): Պատերազմի դաժան առօրյան ճշմարտացի են պատկերել Վ. Վ. Վերեշչագինը, *պերեդվիժնիկները* (Վ. Ի. Սուրիկով, Վ. Մ. Վասնեցով): Ֆ. Ա. Ռուբոն ստեղծել է համայնապատկերային մարտանկարներ: XX դ. սոցիալական և ազգային-ազատագրական հեղափոխությունները արմատապես փոխել են Մ-յան սկզբունքները: Բելգիացի Ֆ. Մազերելը, գերմանացի նկարիչներ Կ. Կոլվիցը և Օ. Դիքսը, անգլիացի Ֆ. Բրենգվինը, մեքսիկացի Խ. Կ. Օրոսկոն իրենց բողոքի ձայնն են բարձրացրել պատերազմի և ճնշման դեմ:

Ելնելով ռեալիստական ավանդույթներից՝ մարտապատկերման ժանրը սովետական արվեստում մեծ զարգացում է ապրել, արտահայտել սոցիալիստական հայրենիքի պաշտպանության, բանակի ու ժողովրդի միասնության գաղափարները, բացահայտել պատերազմների դասակարգային բնույթը: Մարտանկարիչների առաջնահերթ խնդիրն էր սովետական հերոս զինվորի կերպարի ստեղծումը, նրա տոկունության ու արիության գծերի, հայրենիքի հանդեպ ունեցած սիրո պատկերումը: Մ. Բ. Գրեկովը, Կ. Ս. Պետրով-Վոդկինը, Ա. Ա. Դեյնեկան և ուրիշներ ստեղծել են հայրենասիրությամբ տոգորված մարտանկարներ: Մ. նոր վերելք է ապրել Հայրենական մեծ պատերազմի և ետպատերազմյան տարիներին (Ա. Ա. Դեյնեկայի, Կուկրինիկսների, քանդակագործներ Յու. Ի. Միկենասի, Ե. Վ. Վուչետիչի, Մ. Բ. Գրեկովի անվ. ռազմանկարիչների ստուդիայի անդամների գործերը):

Հայ սովետական կերպարվեստում Մ-յան ժանրը զարգացել է հատկապես Հայրենական մեծ պատերազմի շրջանում և նրանից հետո (Հ. Կոջոյան, Գ. Գյուրջյան, Է. Իսաբեկյան, Հ. Զարդարյան և ուրիշներ):

Պատկերազարդումը տես 344-րդ էջից հետո՝ ներդիրներում:

*Գրկ.* Бродский В., Советская батальная живопись, Л.—М., 1950; Садовень В. В., Русские художники баталисты XVIII—XIX веков, М., 1955.

**ՄԱՐՏԱՆՍԿԱՅԱ**, ստանիցա ՌՍՖՍՀ Կրասնոդարի երկրամասի Աբշերոնսկի շրջանում: Բնակչությունը՝ ռուսներ, հայեր: Սովետական տնտեսությունն զբաղվում է ծխախոտի, արևածաղկի և հացահատիկային կուլտուրաների մշակությամբ, անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, կինո, բուժկայան: Մ. հիմնադրել են ռուս կազակները, 1864-ին: Հայերը եկել են Սամսունի և Տրապիզոնի շրջակա գյուղերից, 1896-ին:

**ՄԱՐՏԵՆ** (Martin) Պիեռ (1824—1915), ֆրանսիացի մետաղագործ: 1854—83-ին եղել է Սիրյոյի (Անգուլեմ քաղաքի մոտ) մետալուրգիական գործարանի դիրեկտորը: 1864-ին մշակել է ռեգեներատիվ բոցավառարանում ձուլածո պողպատի ստացման նոր եղանակ:

**ՄԱՐՏԵՆ ԴՅՈՒ ԳԱՐ** (Martin du Gard) Ռոժե (1881—1958), ֆրանսիացի գրող: Մ. դյու Գ-ի գլխավոր ստեղծագործությունը «Տիբոների ընտանիքը» (1922—40, Նոբելյան մրցանակ, 1937) ութ հատորանոց վեպն է: Բուրժ. մի ընտանիքի քայքայման պատմությունը հեղինակի գրչի տակ վերաճում է մի ամբողջ դասակարգի անկման պատմության: Վիպասան Մ. դյու Գ. ձգտում է առավելագույն օբյեկտիվության, նրա հերոսները դրսևորվում են գործողության և երկխոսության ընթացքում: 1939—45-ի երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին Մ. դյու Գ. հանդես է եկել հակաֆաշիստական, հայրենասիրական դիրքերից:

**ՄԱՐՏԵՆՅԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆ**, մարտենյան վառարաններում ընթացող պողպատահալման պրոցես: Որպես ելանյութ օգտագործում են պողպատի ջարդոնը և թուջը (հեղուկ կամ պինդ վիճակում): Մ. ա., ինչպես և պողպատի արտադրության մյուս տեսակները (տես *Թթվածնա-կոնվերտերային պրոցես*, *Էլեկտրապողպատահալման պրոցես*), *սև մետալուրգիայի* ընդհանուր արտադրական ցիկլի երկրորդ օղակն է:

Մարտենյան պրոցեսի ընթացքում բովախառնուրդը հալվում է, ապա գերտաքացվում և բերվում համապատասխան քիմ. բաղադրության (հեռացվում են ածխածինը, սիլիցիումը, մանգանը, ինչպես նաև անցանկալի խառնուկները՝ ֆոսֆորը




Մարտենյան արտադրամաս (լայնական կտրվածք). *1*. բովախառնուրդի անցք, *2*. կռճղակաղապարներով երկաթուղային շարժակազմ, *3*. վառարանի հենամեջ, *4*. հատակադիր լցամեքենա, *5*. թուջատար շերեփ, *6*. լցման կամրջաձև ամբարձիչ, *7*. հալքալցման բացվածք, *8*. հալքալցիչ կամրջաձև ամբարձիչ, *9*. պողպատալցման շերեփ, *10*. հալքալցիչ հարթակ, *11*. կռճղակաղապարներ երկաթուղային սայլակների վրա, *12*. խարամի շերեփներ

և ծծումբը): Լեգիրված պողպատ ստանալու նպատակով պրոցեսի վերջում հալույթին ավելացնում են լրացուցիչ տարրեր: Ըստ վառարանի պատվածքի նյութի մարտենյան պրոցեսը լինում է հիմնային կամ թթվային: Առավել տարածված է հիմնային պրոցեսը, որը հնարավորություն է տալիս վերամշակելու ցանկացած բովախառնուրդային նյութեր, այդ թվում նաև ֆոսֆորի և ծծմբի մեծ պարունակությամբ: Թթվային պրոցեսի առավելությունն այն է, որ դրա միջոցով կարելի է ստանալ բարձր մեխանիկական հատկություններով օժտված պողպատ՝ գազի և ոչ մետաղական խառնուկների փոքր պարունակությամբ: Մարտենյան պրոցեսում հիմնականում օգտագործում են գազային վառելիք (կոքսադոմնային և բնական): Այրման պրոցեսը խթանելու նպատակով ներփչվող օդը հարստացնում են թթվածնով: Մարտենյան պրոցեսում պողպատահալման ընդհանուր տևողությունը կախված է վառարանի տարողությունից և արտադրության պայմաններից: Օրինակ, 200 *տ* տարողությամբ վառարաններում այն տևում է 8—9 *ժ*, իսկ 500 *տ* տարողությամբ վառարաններում հասնում է 12 *ժ*-ի:

Մ. ա-յան հիմնական ցուցանիշը վառարանի հատակի 1 $\text{մ}^2$-ից ստացվող պողպատի օրական զանգվածն է՝ *տ*-ներով (արդի վառարաններում այն կազմում է 12—20 *տ*): Կարևոր ցուցանիշ է նաև մեկ

ու պողպատ ստանալու համար վառելիքի տեսակարար ծախսը:

Ժամանակակից մետալուրգիական գործարաններում Մ. ա-յան զարգացումն ընթանում է ավելի մեծ տարողության վառարանների կիրառման, նրանց կառուցվածքի կատարելագործման, աշխատանքային պրոցեսների ավտոմատացման և տեխնոլոգիական պրոցեսների ինտենսիվացման ճանապարհով: Մարտենյան պրոցեսն աստիճանաբար փոխարինվում է թթվածնա-կոնվերտերային պրոցեսով:

*Գրկ.* Металлургия стали, под ред. В. И. Явойского и Г. Н. Ойкса, М., 1973.

*Թ. Ղազանչյան*

**ՄԱՐՏԵՆՅԱՆ ՊՈՂՊԱՏ**, տես *Պողպատ*:

**ՄԱՐՏԵՆՍԻՏ** [գերմ. մետաղագետ Մարտենսի (A. Martens, 1850—1914) անունից], ասեղնաձև միկրոկառուցվածք. դիտվում է որոշ մխված մետաղական համաձուլվածքներում և մաքուր մետաղներում, որոնց բնորոշ են բազմաձև փոխակերպումներ: Մ. մխված պողպատի հիմնական կառուցվածքային բաղադրիչն է. իրենից ներկայացնում է ածխածնի գերհագեցած պինդ լուծույթ՝ սկզբնական *աուստենիտի* կոնցենտրացիա ունեցող α-երկաթում: Մարտենսիտային կառուցվածքին համապատասխանում է պողպատի առավել մեծ կարծրություն:

**ՄԱՐՏԻ**, Մ ա ր տ ի-ի-Պ ե ր ե ս (Marti y Pérez) Խոսե Խուլիան (1853—1895), կուբացի հեղափոխական, գրող, իսպանական տիրապետության դեմ ազատագրական պայքարի գաղափարախոսն ու կազմակերպիչը: Կուբայի ազգային հերոս: 16 տարեկանից նվիրվել է հեղափոխական գործունեության: 1870-ին արտաքսվել է Իսպանիա: Սովորել է Մադրիդի և Սարագոսայի համալսարաններում: Մ. մեծ դեր է խաղացել 1895-ին Կուբայում սկսված ազգային-ազատագրական ապստամբության կազմակերպման գործում: Զոհվել է իսպանացիների դեմ մարտերում: Մ-ի գրական ժառանգությունը գրեթե ամբողջությամբ կապված է նրա հասարակական գործունեության հետ: Հրատարակվել են Մ-ի «Աբդալա» (1869) ռոմանտիկական դրաման, «Իսմաելիլյո» (1882), «Պարզ բանաստեղծություններ» (1891) ժողովածուները:

**ՄԱՐՏԻԿՅԱՆ** Եղիշե Ավետիսի (ծն. 4.5. 1904, գ. Վանիկ, Բիթլիսի վիլայեթ), հայ սովետական արվեստաբան-նկարիչ: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1961): 1936-ին ավարտել է Լենինգրադի գեղանկարչության, քանդակագործության և ճարտ-յան ինստ-ը: 1936—37-ին դասավանդել է Երևանի գեղարվեստի ուսումնարանում, 1954-ից՝ Երևանի գեղարվեստա-թատերական ինստ-ում (1945—54-ին՝ պրոռեկտոր և արվեստի պատմության ամբիոնի վարիչ, 1970-ից՝ պրոֆեսոր): Մ. գրել է մի շարք մենագրություններ՝ «Ստեփան Աղաջանյան» (1956), «Սովետական Հայաստանի կերպարվեստը» (1956, ռուս., հեղինակակից Պարսամյան Ռ.), «Ռեմբրանդ» (1959), «Հակոբ Կոջոյան» (1961), «Այծեմնիկ Ուրարտու» (1962), «Փանոս Թերլեմեզյան» (1964): Մ-ի հեղինակությամբ հրատարակվում է «Հայկական կերպարվեստի պատմություն»-ը (գիրք 1—2; 1971—75):

**ՄԱՐՏԻԿՅԱՆ** Թաթուլ Սերգեյի (1904—1960), հայ սովետական ինժեներ-էլեկտրիկ: Ս. Ն. *Մարտիկյանի* որդին: ՍՄԿԿ անդամ 1928-ից: 1930-ին ավարտել է Մոսկվայի Գ. Վ. Պլեխանովի անվ. ժողտնտեսության ինստ-ը: 1930—36-ին ղեկավարել է Քանաքեռի ՀԷԿ-ի էլեկտրատեխնիկական մասի նախագծման աշխատանքները, որի գործարկումից (1936) հետո նշանակվել է շահագործման էլեկտրատեղամասի պետ, ապա՝ գլխավոր ինժեներ: 1949—55-ին եղել է ՍՍՀՄ-ում առաջին ստորգետնյա՝ Սևանի ՀԷԿ-ի դիրեկտորը: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի (2) և «Պատվո նշան» շքանշաններով:

*Ռ. Մալխասյան*

**ՄԱՐՏԻԿՅԱՆ** Հարություն Զաքարի (կեղծանունը՝ «Արթուր») [30.10.1899, գ. Տոկք (Խարբերդի վիլայեթում) — 20.6.1981, Երևան], ֆրանսահայ հասարակական գործիչ: Ֆրանսիայի կոմկուսի (ՖԿԿ) անդամ 1924-ից: Սկզբնական կրթությունն ստացել է ծննդավայրում: 1923-ին բնակություն է հաստատել Ֆրանսիայի Մարսել քաղաքում: Գործուն մասնակցություն է ունեցել Ֆրանսիայի կոմկուսի հայկ. սեկցիայի հիմնադրմանը: Եղել է ՀՕԿ-ի Մարսելի մասնաճյուղի հիմնադիրներից, վարել է քարտուղարի պաշտոնը: Հրապարակային ելույթներով և ֆրանսահայ մամուլի էջերում գաղափարական անհաշտ պայքար է մղել դաշնակցության դեմ: Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին (1939—45) ՖԿԿ Կենտկոմի ցուցումով Ֆրանսիայի հվ-ում կազմակերպել է հայ ազատ հրաձիգների ու պարտիզանների մարտական խմբեր և ղեկավարել նրանց գործողությունները: 1943-ի նոյեմբերին Գրենոբլի հակաֆաշիստական ցույցին մասնակցելու համար ձերբակալվել է և մինչև 1945-ի մայիսը արգելափակվել նախ Կոմպիենի, ապա Բուխենվալդի համակենտրոնացման ճամբարներում: 1948-ից ապրել է Երևանում:

*Հ. Մակարյան*

**ՄԱՐՏԻԿՅԱՆ** Սերգեյ (Սերգո) Նիկոլայի (1874, Թիֆլիս — 1957, Երևան), սովետական կուսակցական և պետական գործիչ: ՍՄԿԿ անդամ 1904-ից: Հեղափոխական գործունեության մեջ ներգրավվել է 1901-ից: Մասնակցել է «Բանվորի ձայն» (1906), «Բակինսկի ռաբոչի» («Бакинский рабочий», 1906), «Օրեր» (1907) թերթերի հրատարակմանը: Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Մ-ի բնակարանը եղել է ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի հավաքատեղիներից մեկը (1914-ի օգոստոսին նրա բնակարանում տեղի է ունեցել ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի խորհրդակցություն): 1917-ին այդ բնակարանում էր տեղավորված ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի օրգան «Սոցիալ-դեմոկրատ» հայերեն թերթի խմբագրությունը: Թերթի հրատարակման և տարածման գործին Մ. Մելիքյանի, Ա. Կարինյանի, Ս. Կասյանի և այլոց հետ մասնակցել է նաև Մ.: 1917-ի Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունից հետո ընտրվել է ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի անդամ: Բաքվի կոմունայի պաշտպանության օրերին կազմակերպել և ղեկավարել է մարտական դրուժինա: Կոմունայի պարտությունից



Ս. Ն. Մարտիկյան

հետո, մինչև 1919-ի ապրիլը, գործել է Աստրախանում, այնուհետև ՌԿ(բ)Կ Կենտկոմի հանձնարարությամբ եկել է Հայաստան: Ընտրվել է ՌԿ(բ)Կ Արմենկոմի անդամ: 1920-ի հունիսին բանտարկվել է: Սովետական կարգեր հաստատվելուց հետո Մ. պատասխանատու պաշտոններ է վարել կուսակցական ու սովետական մարմիններում (կուսակցության Երևանի կոմիտեի քարտուղար, Հայաստանի ժողտնտխորհրդի նախագահ, Երևանի քաղսովետի գործկոմի նախագահ): 1933—36-ին եղել է ՀՍՍՀ, ապա՝ ԱՍՖՍՀ Կենտգործկոմի նախագահ, ՍՍՀՄ, ԱՍՖՍՀ Կենտգործկոմների և ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոյի անդամ: Ընտրվել է ՍՄԿԿ XII, XIV, XVI համագումարների պատգամավոր: Պարգևատրվել է Լենինի շքանշանով:

*Հ. Օհանյան*

**ՄԱՐՏԻՆ** (Martin) Արչեր Ջոն Պորտեր (ծն. 1.3.1910, Լոնդոն), անգլիացի կենսաքիմիկոս և ֆիզքիմիկոս: Լոնդոնի թագավորական ընկերության անդամ (1950): 1932-ին ավարտել է Քեմբրիջի համալսարանը, ուր 1934-ից զբաղվել է E վիտամինի և նիկոտինաթթվի անջատման եղանակների մշակմամբ: Ստեղծել է ամինաթթուների անալիզատոր, առաջարկել թղթի վրա (1941) և գազահեղուկային սյունային քրոմատոգրաֆիայի (1952) եղանակները: Զբաղվել է պենիցիլինի անջատման և մաքրման հարցերով: 1965-ից Էյնդհովենի (Նիդերլանդներ) Բարձրագույն տեխ. դպրոցի պրոֆեսոր է: Քրոմատոգրաֆիական եղանակների մշակման համար արժանացել է (Ռ. Լ. Մ. *Սինգի* հետ) Նոբելյան մրցանակի (1952):

**ՄԱՐՏԻՆԵ** (Martinet) Անդրե (ծն. 12.4. 1908, Սենտ-Ալբան դը Վիյար, Սավոյա), ֆրանսիացի լեզվաբան: Կոլումբիայի (1947—55) և Սորբոնի (1955-ից) համալսարանների պրոֆեսոր: Արհեստական լեզուների միջազգային ասոցիացիայի (1946—48) և Եվրոպայի լեզվաբանական ընկերության (1966) պրեզիդենտ: «Word» (1945) լեզվաբանական հանդեսի հիմնադիրներից: Մ. ձևակերպել է գործառական հնչյունակարգության հիմնական դրույթները, տարաժամանակյա հնչյունաբանության մեջ մտցրել ամբողջական համակարգերի քննության սկզբունքը, մանավորապես նկարագրել հնչյունակարգաբանական շղթայական ռեակցիայի մեխանիզմը և մի շարք իրակություններ: Անդրադարձել է հնդեվրոպական լեզուների հնչյունաբանությանը, ձևաբանությանը, ռոմանական, գերմ. լեզուներին, կելտերենին, բասկերենին:

*Երկ.* Принцип экономии в фонетических изменениях, М., 1960; La gémination conso-

nantique d'origine expressive dans les langues germaniques, Copenhague, 1937; La prononciation du français contemporain, P., 1945; Phonology as functional phonetics, L., 1949; A Functional View of Language, Oxf., 1962.

**ՄԱՐՏԻՆԵՍ ՎԵՐԴՈՒԳՈ** (Martinez Verdugo) Առնոլդո (ծն. 1925), Մեքսիկայի բանվորական շարժման գործիչ: Ծնվել է գյուղացու ընտանիքում: 1945-ից մասնակցել է երկրի երիտասարդական և արհմիութենական շարժմանը: 1946-ից Մեքսիկայի կոմունիստական կուսակցության (ՄԿԿ) անդամ: 1949—50-ին եղել է «Նուէվա վիդա» («Nueva Vida») թերթի խմբագիրը և ղեկավարել է ՄԿԿ ԿԿ-ի երիտասարդական հանձնաժողովը: 1951—54-ին՝ ՄԿԿ ԿԿ-ի կազմակերպչական հարցերի հանձնաժողովի անդամ, կոմկուսի Մեխիկոյի կուսակցական կոմիտեի քարտուղար՝ պրոպագանդայի և ագիտացիայի գծով: 1954-ից՝ ՄԿԿ ԿԿ-ի, 1959-ից՝ ԿԿ-ի քարտուղարության և քաղ. հանձնաժողովի անդամ: 1963—73-ին եղել է ՄԿԿ ԿԿ-ի առաջին քարտուղարը: 1973-ի նոյեմբերից կոմկուսի գլխավոր քարտուղարն է: Հեղափոխական գործունեության համար բազմիցս ձերբակալվել է:

**ՄԱՐՏԻՆԻ** (Martini) Ջովաննի Բատիստա, Ջ ա մ բ ա տ ի ս տ ա (1706—1784), երաժշտության իտալացի տեսաբան և պատմաբան, կոմպոզիտոր, կապելմայստեր, մանկավարժ, երգիչ, ջութակահար, կլավեսինահար: Եղել է ֆրանցիսկյան հոգևորական (հայտնի է նաև պ ա դ ր ե Մ ա ր տ ի ն ի մականունով): Բոլոնիայի ֆիլհարմոնիական ակադեմիայի անդամ և փաստացի ղեկավարը: Գլխավոր տեսական աշխատությունն է «Կոնտրապունկտի հիմնական գործնական ակնարկ կամ Օրինակ» (հհ. 1—2, 1774—75): Առաջին «Երաժշտության պատմության» (հհ. 1—3, 1757—81) հեղինակն է: Գրել է օրատորիաներ, ստեղծագործություններ երգեհոնի, կլավեսինի համար ևն: Մ-ի անունով են կոչվում Բոլոնիայի կոնսերվատորիան և քաղաքային գրադարանը: Մ-ի մոտ սովորել են Յո. Ք. Բախը, Վ. Ա. Մոցարտը և ուրիշներ:

**ՄԱՐՏԻՆԻ** (Martini) Սիմոնե (մոտ 1284—1344), իտալացի նկարիչ: Դուչչո դի Բուոնինսենյայի հետևորդը և աշակերտը: Կրել է ֆրանս. ուշ գոթական արվեստի ազդեցությունը: Սոսկանայից բացի, աշխատել է



Սիմոնե Մ ա ր տ ի ն ի. «Ավետում», հատված (1333, Ուֆֆիցի պատկերասրահ, Ֆլորենցիա)

Նեապոլում (1317), Օրվիետոյում (1320), Ասսիզիում (1320-ական թթ.) և Ավինյոնում (1340-ից): Մ-ի ստեղծագործություններում («Մաեստա», որմնանկար Պալացցո Պուբլիկոյում, 1315, կոնդոտյեր Գվիդորիչչո դա Ֆոլիանոյի պատկերը, 1328, երկուսն էլ՝ Սիենայում, «Ավետում», 1333, Ուֆֆիցի պատկերասրահ, Ֆլորենցիա ևն) հետգոթական գերակշռող է դարձել ուշ սապետական մշակույթին բնորոշ սպիրիտուալիստական նրբագեղությունը, սերը պաճուճավոր գծի և ուրվապատկերի հանդեպ, արտահայտիչ գույներանգը: Աշխատելով Ավինյոնում՝ Մ. մտերմացել է Պետրարկայի հետ, նրա համար ստեղծել Լաուրայի դիմանկարը (կորել է) և Վերգիլիոսի ձեռագրի ֆրոնտիսպիսը (Ամբրոզիանա գրադարան, Միլան):

**ՄԱՐՏԻՆԻԿԱ** (Martinique), Ֆրանսիայի «անդրծովյան դեպարտամենտ»-ը համանուն կղզում (Վեստ Ինդիայում): Տարածությունը 1,1 հզ. *կմ²* է, բնակչությունը՝ 325 հզ. (1979), գլխավորապես՝ մուլատներ ու նեգրեր: Պաշտոնական լեզուն ֆրանս. է, հավատացյալների մեծ մասը կաթոլիկներ են: Վարչական կենտրոնը և գլխավոր նավահանգիստը Ֆոր դե Ֆրանս: Վարչական կառավարումն իրականացնում է ֆրանս. կառավարության կողմից նշանակվող պրեֆեկտը:

Մ. կղզին լեռնային է՝ կազմված հրաբխային ապարներից: Կլիման արևադարձային պասսատային է, միջին ամսական ջերմաստիճանը՝ 24—27°C, տարեկան տեղումները՝ 1500—2000 *մմ*:

Մ. կղզին հայտնաբերել է Քրիստափոր Կոլումբոսը 1502-ին: 1635-ից Ֆրանսիան սկսել է կղզու գաղութացումը, որն ուղեկցվել է բնիկների (հնդկացի կարիբների) ոչնչացումով: Պլանտացիաներում (բամբակի, ծխախոտի, XVII դ. վերջից՝ շաքարեղեգի և սուրճի) աշխատելու համար Աֆրիկայից ներմուծել են նեգր ստրուկներ: XVII—XVIII դդ. Մեծ Բրիտանիան բազմիցս փորձել է նվաճել կղզին: Ֆրանս. բուրժ. մեծ հեղափոխության ժամանակ Կոնվենտի դեկրետով 1794-ին Մ-ում ստրկությունը վերացվել է: 1794-ին Մեծ Բրիտանիան զավթել է Մ., սակայն 1802-ին այն վերադարձվել է Ֆրանսիային: Ստրկությունը վերականգնվել է: 1809—14-ին Մ. դարձյալ նվաճել է Մեծ Բրիտանիան: 1848-ին ֆրանս. մյուս գաղութների թվում Մ-ում ևս վերացվել է ստրկությունը: Ֆրանսիայում Երկրորդ կայսրության տապալումից (1870) հետո Մ-ի բնակիչներն ընտրական իրավունքներով հավասարվել են մետրոպոլիայի բնակչությանը և ներկայացուցչության իրավունք ստացել ֆրանս. պառլամենտում: 1900-ին Մ. ստացել է ֆինանսական ինքնավարություն: XX դ. սկզբից սկսել են գործել արհմիություններ և քաղ. կուսակցություններ: Գաղութային վարչակարգի դեմ Մ-ի ժողովրդի պայքարի շնորհիվ 1946-ին կղզուն շնորհվել է Ֆրանսիայի «անդրծովյան դեպարտամենտի» ստատուս: 1957-ին ստեղծվեց *Մարտինիկայի կոմունիստական կուսակցությունը (ՄԿԿ)*: Մ-ի առաջադեմ ուժերը պայքարում են հանուն իրենց ժողովրդի ինքնորոշման իրավունքի և իսկական ինքնավարության:

Տնտեսության հիմքը գյուղատնտեսությունն է (որի արտադրանքը հիմնականում արտահանվում է): Զբաղվում են շաքարեղեգի, բանանի, անանասի, սուրճի, կակաոյի մշակությամբ, անասնապահությամբ, ձկնորսությամբ: Կան գյուղատնտ. հումքի վերամշակման ձեռնարկություններ: Ունի օդանավակայան: Դրամական միավորը ֆրանս. ֆրանկն է:

**ՄԱՐՏԻՆԻԿԱՅԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆ** (ՄԿԿ), կազմակերպորեն ձևավորվել է 1957-ին՝ Ֆրանսիայի կոմկուսի Մարտինիկայի ֆեդերացիայի հիման վրա: Կոմկուսը հենվում է երկրի մասսայական կազմակերպությունների՝ Մարտինիկայի աշխատանքի համընդհանուր կոնֆեդերացիայի, Մարտինիկայի կոմունիստական երիտասարդության միության, Մարտինիկայի կանանց միության վրա: ՄԿԿ իր մոտակա խնդիրն է համարում ստեղծել հակաիմպերիալիստական լայն ճակատ, որը կպայքարի ազգային ինքնավարության համար: ՄԿԿ պատգամավորները մասնակցել են կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային (1960, 1969, Մոսկվա) խորհրդակցություններին և հավանություն են տվել դրանց ընդունած փաստաթղթերին: ՄԿԿ կենտրոնական օրգանը «Ժյուստիս» («Justice») շաբաթաթերթն է, տեսականը՝ «Աքսյոն» («Action») ամսագիրը:

**ՄԱՐՏԻՆՈՍ ՕՊԱՎԱՑԻ,** Լ ե հ ա ց ի [XIII դ. սկիզբ, Օպավա (Չեխիա)—1279, Բոլոնիա], ժամանակագիր, կաթոլիկ եկեղեցական գործիչ: Ազգությամբ չեխ (այլ կարծիքով՝ լեհ): Եղել է պապական պալատի երեց, կյանքի վերջում՝ Լեհաստանի եկեղեցական կենտրոն Գնեզնոյի թեմակալ արքեպիսկոպոս: Սխալմամբ նույնացվել է Մարինուս Շոտլանդացու, Մարտինոս Սանդոմիրցու և այլոց հետ: Հայտնի է եկեղեցական իրավական կանոններով, քարոզներով և հատկապես Հռոմի կայսրերի ու պապերի ժամանակագրությամբ: Մ. Օ. իր ժամանակագրությունը սկսել է նախահանրապետական և նախաքրիստոնեական Հռոմի պատմությունից և հասցրել մինչև XIII դ. 2-րդ կեսը: Օգտագործել է Տիտոս Լիվիոսի, Եվսեբիոս Կեսարացու, Պողոս Օրոզեոսի, Դամասոս պապի, Պողոս սարկավագ Հռոմեացու ժամանակագրությունները ևն: Մ. Օ-ի ժամանակագրությունն անմիջապես թարգմանվել է բազմաթիվ լեզուներով և օգտագործվել որպես ընդհանուր պատմության դասագիրք: 1348-ին Ավինյոնում *Ներսես Պալիանենցը* այն թարգմանել է հայերեն: Հայերեն թարգմանությունում առկա է նաև 1279—1342 թթ. ժամանակագրությունը, որն առ այսօր բնագրով հայտնի չէ: Մ. Օ-ու ժամանակագրությունը շարունակել է Ներսես Պալիանենցը՝ գրելով 1342—1351-ի պատմությունը:

*Երկ.* Martini Oppaviensis Chronicon Pontificum et Imperatorum, Ed. L. Veiland-Monumenta Germaniae Historica... Seriptorum, t. 22, Hannoverae, 1872, p. 377—482.

*Յու. Վարդանյան*

**ՄԱՐՏԻՆՈՎ** Ալեքսանդր Եվստաֆիևիչ (1816—1860), ռուս դերասան: Ռուս. բեմական ռեալիզմի հիմնադիրներից: 1827—1835-ին սովորել է Պետերբուրգի թատերական ուսումնարանում, սկզբում՝ Շ. Դիդլոյի բալետի, ապա՝ Պ. Ա. Կարատիգինի դրամատիկական դասարաններում: 1836-ից աշխատել է Ալեքսանդրյան թատրոնում: Մ. կատարել է բազմաթիվ դերեր


Ա. Ե. Մարտինով

վոդևիլներում՝ դրսևորելով դիմախաղի, ժեստի մեծ վարպետություն: Վ. Գ. Բելինսկին, բարձր գնահատելով Մ-ի արվեստը, հատկապես ընդգծել է Սինիչկինի (Դ. Տ. Լենսկու «Լև Գուրիչ Սինիչկին», 1840) դերակատարումը: Մ-ի ստեղծագործության երգիծական ուղղվածությունն ավելի վառ արտահայտվել է Ն. Գոգոլի պիեսներում (Խլեստակով, «Ռևիզոր», 1843 ևն): Մ-ի ստեղծագործական նոր շրջանն սկսվել է Ի. Ս. Տուրգենևի և Ա. Օստրովսկու պիեսների կերպարների անձնավորումներով: Հոգեբանական ռեալիզմի խոշոր նվաճում է եղել Մոշկինի (Տուրգենևի «Ամուրի», 1859) դերակատարումը: Ռուս թատրոնի պատմության մեջ անջնջելի հետք է թողել Մ-ի Տիխոնը (Ա. Օստրովսկու «Ամպրոպ», 1859)՝ դաժան ռեժիմից կործանված մարդու կերպարը: Խաղացել է 600-ից ավելի դեր՝ սուր երգիծական գրոտեսկային կոմիզմից երբեմն հասնելով ողբերգության:

*Գրկ.* Альтшуллер А., А. Е. Мартынов, Л.—М., 1959.

**ՄԱՐՏԻՆՈՎ** Լեոնիդ Նիկոլաևիչ (1905, Օմսկ —1980, Մոսկվա), ռուս սովետական բանաստեղծ: Սիբիրի անցյալին են նվիրված Մ-ի 1930-ական թթ. գրած պոեմվիպակները («Տոբոլյան տարեգիր», «Դրախտ որոնողը», «Տնախյուս Վեներան»), որոնք աչքի են ընկնում ինքնատիպ ֆաբուլայով: Մ-ի ռոմանտիկ քնարերգությունը կապված է առասպելական-ֆանտաստ. կերպարի հետ («Ծովածոց», «Էրզինյան անտառը», ժողովածուներ, երկուսն էլ՝ 1945): Հասուն շրջանի քնարական գործերից են «Բանաստեղծություններ» (1955), «Առաջնեկություն» (1965, ՌՍՖՍՀ Մ. Գորկու անվ. պետ. մրցանակ, 1966), «Բնության ձայնը» (1966) ժողովածուները: 1950-ական թթ. Մ. հանդես է եկել նաև որպես թարգմանիչ («Տարբեր երկրների բանաստեղծներ», 1964): ՍՍՀՄ պետ. մրցանակի դափնեկիր (1974):

**ՄԱՐՏԻՆՍՈՆ** (Martinson) Հարրի Էդմունդ (ծն. 1904), շվեդ գրող: Շվեդ. ակադեմիայի անդամ (1949): Եղել է նավաստի: «Բնություն» (1934), «Պասսատ» (1945), «Ցիկադա» (1953) ժողովածուներին, որ մեծ մասամբ սպիտակ ոտանավորով են գրված, բնորոշ է բնությունը փիլիսոփայորեն իմաստավորելու ձգտումը: Առավել նշանակալի գործերից են «Աննպատակ ճանապարհորդություններ» (1932), «Մնաս բարով, Կապ» (1933) ուղեգրությունները և «Ճանապարհ դեպի Կլոքրիկե» (1948) վեպը, որոնցում Մ. զարգացրել է այն ուտոպիական գաղափարը, թե բուրժ. քաղաքակրթության չարիքը հաղթահարելու միջոցը անվերջ թափառելն է: «Եղինջը ծաղկում է» (1935) և «Կյանքի ուղին» (1936) ինքնակենսագրական վեպեր են: «Անիարա» (1956) պոեմում Մ. հոռետեսորեն է նայում տեխ. առաջընթացին, որը, նրա կարծիքով, սպառնում է մարդկության գոյությանը: Նոբելյան մրցանակի դափնեկիր (1974):

**ՄԱՐՏԻՏ** (< լատ. Mars — երկաթի ալքիմիական անվանումը), միներալային նյութ, մագնետիտի ($Fe_3O_4$)՝ հեմատիտի ($Fe_2O_3$) փոխարկվելու արգասիքը: Մ-ի առաջացումը տեղի է ունենում մագնետիտի օքսիդացման ընթացքում ինչպես *հողմահարման կեղևի* զոնայում, այնպես էլ խորքային պայմաններում: Մարտիտային հանքանյութերը համարվում են բարձրորակ երկաթի հանքաքար:

**ՄԱՐՏԻՐՈՍ**, գյուղ Հայկական ՍՍՀ Ազիզբեկովի շրջանում, Վայքի լեռնաշղթայի հյուսիսային լանջին, շրջկենտրոնից 16 *կմ* հարավ-արևելք: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև ծխախոտագործությամբ, հացահատիկի և կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կապի բաժանմունք, կինո, կենցաղսպասարկման տաղավար, մանկապարտեզ, բուժկայան: Մ-ից 2 *կմ* արմ. հին գյուղատեղին է, որն



Մարտիրոս գյուղի Ս. Աստվածածին վիմափոր վանքի (XIII դ.) հատակագիծը

ըստ գյուղամիջում պահպանված գրանիտե (3,35 *մ* բարձրությամբ) գեղաքանդակ հուշարձան-խաչքարի (կերտել է Շնորհավոր Աղբարը) արձանագրության, 1283-ին հիմնել է Դեղկա որդի Մխիթարը՝ Պռոշ իշխանի և նրա որդի Պապոն Հասանի հրամանով:

Մ-ի երկու զույգ մույթերով եռանավ բազիլիկը կառուցվել է 1866-ին, հին եկեղեցու տեղում, վերջինիս բեկորների և խաչքարերի օգտագործումով: Գյուղի շրջակայքում կա երեք գերեզմանոց՝ XIII—XVII դդ. խաչքարերով և տապանաքարերով: Մ-ից մոտ 4 *կմ* հվ-արլ. գտնվում է Ս. Աստվածածին վիմափոր վանքը (XIII դ.)՝ ամբողջովին կերտված Նզար լեռան մեջ: Բաղկացած է նախազավթից, ժամատնից ու եկեղեցուց: Քառակուսի հատակագծով (3 × 3 *մ*) նախազավթից արլ. խոշոր ժամատունն է (6,7×7 *մ*, 9,4 *մ* բարձրությամբ), որն ունի խաչվող թաղերի ձևով փորված ծածկ ու լուսավորվում է գմբեթանման երդիկով: Հվ. պատի արմ. անկյունից դուռ է բացվում դեպի վերգետնյա քարաշեն եկեղեցու ճարտ. ձևերով փորված խաչաձև կենտրոնագմբեթ հորինվածքով եկեղեցին: Խաչաթևերը ուղղանկյուն են, գլանաձև ծածկով, բացի արլ-ից, որտեղ բեմի կիսաշրջանաձև աբսիդն է: Եկեղեցու չորս անկյուններում փորված են ուղղանկյուն ավանդատներ: Գմբեթատակ քառակուսուց անցումը դեպի կլոր թմբուկը իրականացված է առագաստներով: Գմբեթակիր կամարները նստում են պարզունակ խոյակների վրա: Եկեղեցին լուսավորվում է գմբեթի փոքր երդիկով: Ըստ ներսում պահպանված արձանագրությունների, վանքը կառուցել է Մատթևոս վարդապետը 1286-ին (ճարտարապետն է *Գրիգորիկը*):


Մարտիրոս գյուղի հիմնադրման հուշարձան-խաչքարը (1283, քարգործ՝ Շնորհավոր Աղբար)

*Գրկ.* Հովսեփյան Գ., Խաղբակյանք կամ Պռոշյանք հայոց պատմության մեջ, մաս 1, Վաղ-պատ, 1928: Եղիազարյան Հ., Ազիզբեկովի շրջանի կուլտուրայի հուշարձանները, Ե., 1955: Դիվան հայ վիմագրության, պր. 3, Ե., 1967 (կազմ. Ս. Բարխուդարյան): «Материалы по археологии Кавказа», в. 13, М., 1916, с. 157—159.

*Մ. Հասրաթյան*

**ՄԱՐՏԻՐՈՍ ԴԻ ԱՌԱՔԵԼ** (ծն. և մահ. թթ. անհտ.), XVIII դարի առաջին կեսի հայ ժամանակագիր, գրիչ, ճանապարհորդ: Եղել է Պարսկաստանում, Հնդկաստանում, Իտալիայում: Կազմել է Սեֆյան Պարսկաստանի (ընդգրկում է մինչև 1729-ը) և «[Վասն] թագաւորաց Հընդկաց» համառոտ ժամանակագրությունները:

*Վ. Դիլոյան*

**ՄԱՐՏԻՐՈՍ ԵՐԶՆԿԱՑԻ** (ծն. և մահ. թթ. անհտ.), ճանապարհորդ: 1489—96-ին ուղևորություն է կատարել Արևմտյան Եվրոպայում՝ անցնելով ավելի քան 13000 *կմ*: Մ. Ե. եղել է հարյուրավոր քաղաքներում ու գյուղերում, որոնց մասին համառոտակի պատմում է իր ուղեգրության մեջ (Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարան, ձեռ. № 3488): Այնտեղ նկարագրված են խոշոր քաղաքները, վանքերը, տվյալներ են բերված բնակչության թվի, տնտ. կյանքի վերաբերյալ: Կարծիք է հայտնվել (Ս. Մարտեն, Հ. Աճառյան, Ք. Պատկանյան) թե Մ. Ե. Բիսկայան ծովագնացների հետ Ատլանտյան օվկիանոսով նավարկություն է կատարել Քրիստափոր Կոլումբոսի օրինակով «նոր երկրներ գտնելու համար», որը, սակայն, չի հաստատվում:

*Գրկ.* Հակոբյան Վ., Մարտիրոս Երզնկացու ճանապարհորդական նոթերը, «Տեղեկագիր ՀՍՍՀ ԳԱ, հաս. գիտ.», 1957, № 6: Saint-Martin M., Relation d'un voyage..., «Journal Asiatique», P., 1826 (décembre).

*Ա. Այվազյան*

**ՄԱՐՏԻՐՈՍ ԽԱՐԱՍԱՐՑԻ** (ծն. և մահ. թթ. անհտ.), XVI դարի հայ տաղերգու: Բանաստեղծությունների հնագույն օրինակները պահվում են Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանում (№ 33 ձեռագիր): Գրել է սիրո տաղեր, որոնք

կապվում են հայ միջնադարի քնարերգության ավանդույթների հետ: Դրանք պարզ զեղումներ են և աչքի են ընկնում թախծոտ բովանդակությամբ: Կենցաղային ծիսական տաղերում («Տաղ ուրախութեան», «Տաղ հարսանեաց եւ ուրախութեան. ընտիր եւ գեղեցիկ», «Տաղ կնքտուքի եւ տղադուքի. կնքահօր եւ սանի») պատկերել է ժող. տոնախմբությունները՝ ծանրանալով երևույթի աշխարհիկ և արտաքին կողմերի վրա: «Տաղ ի վերայ Կաֆա քաղաքին. ասացեալ վասն ուրախութեան» բանաստեղծության մեջ Կաֆան ներկայացված է որպես հայ ժողովրդի հոգևոր կենտրոններից մեկը: Գինու և խնջույքի երգերն աչքի են ընկնում կենսասիրությամբ: Հայ քնարերգության մեջ Մ. Խ. առաջինն էր, որ երգեց խնջույքը, ուրախությունն ու վայելքը՝ դառնալով այս մոտիվի սկզբնավորողը:

*Գրկ.* Կոստանյանց Կ., Նոր ժողովածու, պր. 2, Թ., 1892, էջ 47—52, պր. 4, Վաղ-պատ, 1903, էջ 17—26: Սահակյան Հ., Մարտիրոս Խարասարցու տաղերը, «ԲՄ», № 10, 1971: Նույնի, Ուշ միջնադարի հայ բանաստեղծությունը (XVI—XVII դդ.), Ե., 1975:

*Ա. Դոլուխանյան*

**ՄԱՐՏԻՐՈՍ ԽԱՐԲԵՐԴՑԻ** (ծն. և մահ. թթ. անհտ.), XVI դ. հայ տաղասաց: Եղել է հոգևորական (երեց): Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանի №№ 33, 2676, 8968 ձեռագրերը (ԺԶ դ.) պարունակում են Մ. Խ-ուց մեզ հասած միակ տաղը («Երգ ի Խարբերթցի Մարտիրոս Երիցուէ ասացեալ ի վերայ չախուի, վասն ուրախութեան մարդկան», սկզբնատողը՝ «Սիրտըս ի փորս դողայր ահուս...»): Այն պահպանվել է նաև հաջորդ դարերում ընդօրինակված ձեռագրերում: Տաղը հայ երգիծական քնարերգության առաջին արտահայտություններից է, գրված է զավեշտական ոճով: Բազմիցս վերահրատարակվել է (Ղ. Ալիշանը հրատարակել է նաև անգլ.):

*Գրկ.* Ալիշան Ղ., Հայոց երգք ռամկականք, Վնտ., 1852, էջ 75—88: Կոստանյանց Կ., Նոր ժողովածու, պր. 2, Թ., 1892, էջ 34—37: Սահակյան Հ., Ուշ միջնադարի հայ բանաստեղծությունը (XVI—XVII դդ.), Ե., 1975:

*Ա. Դոլուխանյան*

**ՄԱՐՏԻՐՈՍ ԽԻԶԱՆՑԻ** (ծն. և մահ. թթ. անհտ.), XVI դ. վերջի —XVII դ. սկզբի հայ մանրանկարիչ: *Վասպուրականի մանրանկարչության դպրոցի* նշանավոր դեմքերից: Ձեռագրեր է նկարազարդել որդու՝ Գրիգորիսի հետ (Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանում պահվում է նրանց նկարազարդած հինգ ձեռագիր՝ Ավետարան, 1598, ձեռ. № 5576, Հովհան Ոսկեբերան, Մեկնություն, 1600, ձեռ. № 1378, Ավետարան, 1604, ձեռ. № 6093, Հայսմավուրք, 1604, ձեռ. № 10676, Ավետարան, XVII դ., ձեռ. № 8394): Մ. Խ-ի արվեստում Վասպուրականի մանրանկարչության դասական շրջանին (XIII—XV դդ.) բնորոշ պայմանականախորհրդանշական բնույթը փոխարկվել է թեմատիկ-պատմողականով: Նկարիչը մարդկանց և նրանց միջավայրը պատկերել է դեկորատիվ՝ ոսկու շռայլ օգտագործմամբ:

Մ. Խ-ի մանրանկարներին բնորոշ է դրամատիկ ոգեշնչվածությունը:

*Հ. Հակոբյան*



Մարտիրոս Խիզանցի և որդի Գրիգորիս. «Վերջին դատաստան», մանրանկար 1604-ին պատկերազարդված Ավետարանից (Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարան, ձեռ. № 6093)

**ՄԱՐՏԻՐՈՍ ՂՐԻՄԵՑԻ**, Մարտիրոս Կաֆացի [մոտ 1620, ք. Կաֆա (այժմ՝ Թեոդոսիա)—25.8.1683, Եգիպտոս], հայ եկեղեցական-քաղաքական գործիչ, մատենագիր, տաղասաց: Ծնողները՝ Գրիգոր և Խաթուն: Սովորել է Կաֆայի Ս. Նշան վանքում, ապա տեղափոխվել Թոխաթ և աշակերտել տաղասաց Ստեփանոս քահանա Թոխաթեցուն: Ուսումնառությունը շարունակել է Երուսաղեմի Ս. Հակոբյանց վանքում՝ Աստվածատուր Տարոնացու մոտ: 1659—60-ին եղել է Կ. Պոլսի պատրիարքը, 1661—64-ին՝ Ղրիմի թեմի եպիսկոպոսը, 1680—83-ին՝ Երուսաղեմի պատրիարքը:

Մ. Ղ. կարևոր դեր է խաղացել Եղիազարյան-Հակոբյան պայքարում (1664—80): Եղիազար Ա. Այնթափցին փորձում էր ստեղծել Էջմիածնին հակաթոռ կաթողիկոսություն, որի դեմ դուրս եկավ Էջմիածնի կաթողիկոս Հակոբ Դ Ջուղայեցին: Ընդդիմադիր թևը, սակայն, փաստորեն ղեկավարում էր Մ. Ղ., որին և հաջողվեց խանգարել իրականացնելու միասնական կաթողիկոսության տրոհումը: Մ. Ղ. թողել է մատենագիտական հարուստ ժառանգություն: Նրա գրչին են պատկանում «Կարգ և թիւ թագաւորաց ազգիս Հայոց» (1672) չափածո ժամանակագրությունը, «Պատմութիւն Ղրիմայ յերկրի» (1672), որ կարևոր աղբյուր է Ղրիմի հայ գաղութի պատմության համար, «Ողբ Երեմիա մարգարէին...» (XVII դ. 70-ական թթ.) երկերը: 1672-ին չափածոյի է վերածել Հայսմավուրքը, գրել է ներբողներ, թվերի մասին չափածո վիճաբանություն («Յաղագս թուոց») են: Մ. Ղ-ուն բնորոշ է երգիծանքը: Նա վերածննդական շրջանի առաջին տաղերգուներից է, որ զավեշտին սոցիալական շեշտ է տվել: Մ. Ղ-ու երգիծական ոտանավորների հերոսները ժամանակի եկեղեցական-քաղաքական գործիչներ են:

*Գրկ.* Մարտիրոս Ղրիմեցի և իր քերթվածները, ուսումնասիր. Մ. Պոտուրյանի, Բուխարեստ, 1924: Մարտիրոսյան Ա., Մարտիրոս Ղրիմեցի, Ե., 1958:

*Ա. Մարտիրոսյան*

**ՄԱՐՏԻՐՈՍԻ ԼԵՌՆԱՆՑՔ**, գտնվում է Հայկական ՍՍՀ Ազիզբեկովի շրջանում, Վայքի լեռնաշղթայի միջին մասում, մոտ 2050 *մ* բարձրության վրա: Մ. լ-ով անցնում է Ազիզբեկով—Նախիջևան խճուղին:

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ** Աղասի Մկրտչի [1877, գ. Բըկենանց (այժմ՝ ՀՍՍՀ Ղափանի շրջանում)—23.11.1960, Ղափան], Հյուսիսային Կովկասում և Հայաստանում սովետական իշխանության հաստատման համար պայքարի մասնակից: ՍՄԿԿ անդամ 1904-ից: Հեղափոխական գործունեության մեջ ընդգրկվել է 1900-ական թթ. ըսկըզբներից: Պրոպագանդիստական աշխատանք է տարել Բաքվի բանվորների շըրջանում: Ընտրվել է ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի անդամ: Մի քանի անգամ (1903, 1905, 1908, 1910) ձերբակալվել և արտաքսվել է: 1907-ին ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի երկու այլ ընկերների հետ կազմակերպել է Ղափանի հանքափորների գործադուլը (տես *Ղափանի բանվորների գործադուլ 1907*): Գործուն մասնակցություն է ունեցել 1918-ին Հյուսիսային Կովկասում մղված քաղաքացիական կռիվներին: Բաքվի կոմունայի շրջանում ընտրվել է Բաքվի սովետի անդամ: 1919-ին, որպես Աստրախանի արտակարգ հանձնաժողովի աշխատակից, պայքարել է հակահեղափոխության դեմ: 1919—20-ին կուսակցական պատասխանատու աշխատանք է տարել Չեռնոյարում, Սարատովում և Պյատիգորսկում: 1921-ին Ա. Ֆ. Մյասնիկյանի առաջարկով տեղափոխվել է Հայաստան: Եղել է Ղափանի տեղամասային հեղկոմի (1921—22), Դսեղի տեղամասային գործկոմի (1922), Ղափանի տեղամասային գործկոմի (1923) նախագահ ևն: Պարգևատրվել է Լենինի շքանշանով:

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ** Ամասի Պետրոսի [18. (30).4.1897, Երևան—24.12.1971, Երևան], հայ սովետական կինոռեժիսոր և կինոդերասան: ՀՍՍՀ ժող. արտիստ (1967): 1924-ին ավարտել է Վրաստանի Պետկինոարդին կից ստուդիան: 1922-ից նկարահանվել է Թբիլիսիի կինոստուդիայում՝



Ա. Պ. Մարտիրոսյան

Բ. Բարսկու, Հ. Բեկնազարյանի և այլ ռեժիսորների կինոնկարներում, 1926-ից աշխատել Երևանի կինոստուդիայում (դերասան և ռեժիսորի օգնական): Հիմնականում խաղացել է ոչ մեծ դերեր՝ «Նամուս», «Զարե», «Խասփուշ», «Կիկոս» և այլ ֆիլմերում: 1929-ից հանդես է եկել որպես ռե-



Կադր «Գիքոր» կինոնկարից (1934), ռեժ. Ա. Մարտիրոսյան

ժիսոր: Ստեղծել է «Հրետանային դպրոց» (1929), «Հայաստանն այսօր» (1933), «Սասունցի Դավթի» հազարամյակը» (1939), «Կոլտնտեսային գյուղերի լույսերը» (1949) և այլ վավերագրական ֆիլմեր: Լավագույն գեղարվեստական ֆիլմերից են՝ «Մեքսիկական դիպլոմատները» (1932, Լ. Քալանթարի հետ)՝ քաղ. սատիրայի լավագույն նմուշը հայկ. կինոյում, «Քրդեր-եզդիներ» 1934)՝ նվիրված սովետական իշխանության օրոք ազգ. փոքրամասնությունների հոգեվոր վերածնունդին, «Գիքոր» (1934, ըստ Հ. Թումանյանի), «Քաջ Նազար» (1940, ըստ Դ. Դեմիրճյանի), «Հասցեատիրոջ որոնումները» (1955, Յու. Երզնկյանի հետ), «01—99» (1959, Երևանի հեռուստատուդիա): Գրել է կինոսցենարներ: Պարգևատրվել «Պատվո նշան» շքանշանով: *Է. Մանուկյան*

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ** Առնոլդ Բոգդանի [16 (29).11.1902, Բաքու —30.12.1976, Երևան], հայ սովետական դերասան և ռեժիսոր: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1962): ՍՄԿԿ անդամ 1944-ից: 1925-ին ավարտել է Բաքվի թատերական տեխնիկումը: Աշխատել է Բաքվի ռուս. բանվոր-երիտասարդական, 1930—32-ին՝ Բանվորական, ապա Լենինգրադի և այլ քաղաքների ռուս. թատրոններում: 1938-ից՝ Երևանի Պատանի հանդիսատեսի թատրոնի դերասան: Լավագույն դերերից են՝ Ֆերդինանդ (Շիլլերի «Սեր և խարդավանք»), Արթուր («Բոռ», ըստ Վոյնիչի): Հետագայում բեմադրություններ է տվել Կիրովականի, Արտաշատի Ղափանի, ինչպես և Երևանի ռուսական ու ադրբ. թատրոններում (Շեքսպիրի «Օթելլո», Կ. Սիմոնովի «Ռուսական հարց», Վուրգունի «Վագիֆ»):

*Գրկ.* Կագրամանով Ն., Հինգ դիմանկար, Ե., 1972: *Բ. Հովակիմյան*

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ** Արտաշես Ազատի (ծն. 9.7.1930, Լենինական), հայ սովետական բանասեր, պատմաբան: Բանասիրական գիտ. դ-ր (1970): ՍՄԿԿ անդամ 1949-ից: 1952-ին ավարտել է Լենինականի Մ. Նալբանդյանի անվ. մանկավարժական ինստ-ի պատմալեզվագրական ֆակուլտետը: Ուսումնասիրությունները վերաբերում են Հայաստանի հին և միջնադարյան պատմության ու մատենագրության խնդիրներին: Գրել է «Մարտիրոս Ղրիմեցի» (1958) և «Պատմութիւն եւ խրատք Խիկարայ Իմաստնոյ» (գիրք 1—2, 1969—72) մենագրությունները և մի շարք պատմագիտական հոդվածներ:

*Երկ.* Հայաստանը և առաջին Սասանյանները, «ՊԲՀ», 1975, № 3: Սասանյանների արևմտյան նվաճումները և Հայաստանը, «ՊԲՀ», 1977, № 1: Սասանյանները և Հայաստանի քաղաքական շրջադարձը III դարում, «ՊԲՀ», 1979, № 1:

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ** Բալաբեկ Գրիգորի [20.5. 1905, գ. Թոխանշալու (այժմ՝ Մասիս, ՀՍՍՀ Արտաշատի շրջանում)—6.4.1972, Երևան], կուսակցական և պետական աշխատող: ՍՄԿԿ անդամ 1927-ից: Սովորել է Երևանի I և II աստիճանի կուսակցական դպրոցներում (1925—29), ավարտել Բաքվի մարքսիզմ-լենինիզմի ինստ-ը (1936): 1929—31-ին կոմերիտական կազմակերպչական աշխատանքի է եղել Նոր Բայազետի (Կամո) և Ղամարլուի (Արտաշատ) շրջկոմներում: 1936-ից աշխատել է ՀԿ(բ)Կ Երևանի կոմիտեի պրոպագանդայի և ագիտացիայի տանը: 1937-ի մայիսից ՀԿ(բ)Կ Երևանի քաղկոմի երկրորդ քարտուղարն էր, սեպտեմբերից՝ ՀԿԿ ԿԿ-ի ագիտացիայի և պրոպագանդայի բաժնի վարիչը: 1938—42-ին եղել է ՀՍՍՀ լուսավորության ժողկոմ: 1942—53-ին՝ Հայկական գյուղատնտեսական ինստիտուտի դիրեկտոր, միաժամանակ՝ ինստ-ի մարքսիզմ-լենինիզմի ամբիոնի վարիչ (1942—49): 1953-ից ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալն էր, 1959—61-ին՝ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության պետ. կոմիտեի նախագահը: Միաժամանակ 1958-ից՝ ՀՍՍՀ արտաքին գործերի մինիստր՝ այդ պաշտոնում մնալով մինչև իր կյանքի վերջը: Մ. սովետական պատվիրակության կազմում մասնակցել է (1958, 1959, 1971) ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի նստաշրջաններին: Եղել է ՀամԿ(բ)Կ XXIII և ՀԿ(բ)Կ X—XIV համագումարների պատգամավոր, ՍՍՀՄ I և ՀՍՍՀ II—VII գումարումների Գերագույն սովետի դեպուտատ, ՀԿԿ ԿԿ-ի անդամ (1938—48): Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի 2, Հայրենական պատերազմի II աստիճանի և «Պատվո նշան» շքանշաններով: *Լ. Առաքելյան*

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ** Գերասիմ Արամայիսի (ծն. 7.6.1926, Երևան), սովետական կուսակցական և պետական աշխատող: ՍՄԿԿ անդամ 1949-ից: Ավարտել է Թբիլիսիի երկաթուղային տրանսպորտի ինժեներների ինստ. (1948), ՍՄԿԿ ԿԿ-ին կից բարձրագույն կուսակցական դպրոցը (1971): 1950—65-ին աշխատել է ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստրության Հյուսիսային երկաթուղու բաժանմունքներում (1961-ից Վորկուտայի բաժանմունքի պետ): 1965-ից՝ ՍՄԿԿ Վորկուտայի քաղկոմի առաջին քարտուղար: 1973-ի փետրվարից աշխատել է ՍՄԿԿ ԿԿ-ի ապարատում որպես տեսուչ: 1973-ից՝ ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ: 1977-ից Մ. ՀՍՍՀ ժող. վերահսկողության կոմիտեի նախագահն է: Ընտրվել է ՍՄԿԿ Կոմի մարզկոմի բյուրոյի անդամ, 1976-ից՝ ՀԿԿ ԿԿ և նրա բյուրոյի անդամ, 1981-ից՝ անդամության թեկնածու: Եղել է Կոմի ԻՍՍՀ VI—VIII, ՍՍՀՄ՝ VII—IX, ՀՍՍՀ X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: ՍՄԿԿ XXIV, ՀԿԿ XXVI—XXVII համագումարների պատգամավոր է: Պարգևատրվել է Լենինի, Հոկտեմբերյան հեղափոխության, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով:

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ** Գուրգեն Թորգոմի (ծն. 14.6.1934, Էջմիածին), հայ սովետական քիմիկոս: Քիմ. գիտ. դ-ր (1972), պրոֆեսոր (1976): Ավարտել է Երևանի համալսարանի քիմ. ֆակուլտետը (1956): Եղել է Երևանի բժշկ. ինստ-ի դեղագործական, թունաբանական քիմիայի և ֆարմակոգնոզիայի ամբիոնի առաջին վարիչը (1974—1978), 1978-ից Նաիրիտ գիտաարտադրական միավորման գլխավոր դիրեկտորի տեղակալն է: Ա. *Բաբայանի* աշակերտն է: Զբաղվում է CH և NH թթուները հիմնային միջավայրում չհագեցած միացություններով և ալկիլ հալոգենիդներով ալկիլելու ռեակցիաների հետազոտությամբ: Մ. բացահայտել է ապրոտոն երկբևեռ լուծիչներում (ցածր ջերմաստիճաններում) չհագեցած միացությունների հալոգենացման ռեակցիաների մեխանիզմը, որով հնարավոր դարձավ մշակել բուտադիենի հեղուկաֆազ քլորման եղանակը և կրճատել քլորոպրենի արտադրության ժամանակ առաջացող թափոնները:

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ** Հայկ Հովհաննեսի (ծն. 22.12.1903, Բաքու), գեներալ-մայոր (1.9. 1943): ՍՄԿԿ անդամ 1926-ից: Ծնվել է նավթագործ բանվորի ընտանիքում: 1922-ից ընտանիքով տեղափոխվել է Երևան: 1925-ին ավարտել է Անդրկովկասյան ռազմա-քաղաքական դպրոցը (Թիֆլիս), 1925—30-ին ծառայել հայկ. հրաձգային դիվիզիայում որպես վաշտի հրամանատար և քաղղեկ: 1932-ին Գլխավոր շտաբին կից հետախուզական միամյա դասընթացները վերջացնելուց հետո նշանակվել է հրաձգային դիվիզիայի շտաբի հետախուզության պետ: 1933-ին ընդունվել և



Հ. Հ. Մարտիրոսյան

1936-ին ավարտել է Մ. Վ. Ֆրունզեի անվ. ռազմ. ակադեմիան: 1938-ին մասնակցել է Խասան լճի մարտերին: Մինչև 1941-ի հոկտեմբերը ծառայել է Հեռավորարևելյան ռազմական օկրուգում, որպես դիվիզիայի օպերատիվ բաժնի, շտաբի պետ, հրամանատարի տեղակալ, հրաձգային դիվիզիայի հրամանատար: 1941-ի նոյեմբերից 239-րդ հրաձգային դիվիզիան Մ-ի հրամանատարությամբ մասնակցել է Մոսկվայի, Կալուգայի, Տուլայի, Սմոլենսկի պաշտպանական, ապա հարձակողական (ազատագրել են մոտ 200 բնակավայր), 1942-ի հուլիս—հոկտեմբերին՝ Ռժևի հարձակողական մարտերին և ազատագրել ավելի քան 60 բնակավայր: 1944-ին Գլխավոր շտաբի ռազմ. ակադեմիայի բարձրագույն դասընթացներն ավարտելուց հետո նշանակվել է 43-րդ բանակի հրամանատարի

տեղակալ, որոշ ժամանակ եղել է այդ բանակի 90-րդ հրաձգային կորպուսի հրամանատար: Այնուհետև մասնակցել է Սովետական Մերձբալթիկայի, Արևելյան Պրուսիայի, Քյոնիգսբերգի ազատագրման մարտերին և թշնամու Դանցիգ-Գդինյախմբավորման ջախջախմանը: 1946—51-ին Մ. եղել է հայկ. Թամանյան հրաձգային դիվիզիայի հրամանատար: 1954-ին զորացրվել է: Պատերազմի վետերանների սովետական կոմիտեի Երևանի բաժանմունքի և «Գիտելիք» ընկերության գիտամեթոդական խորհրդի նախագահն է: Պարգևատրվել է Լենինի, Կարմիր դրոշի 3, Հայրենական պատերազմի 1-ին և Կուտուզովի 2-րդ աստիճանի շքանշաններով:

*Ա. Ղազարյան*

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ** Հարություն Արտաշեսի [1.5.1921, Ալեքսանդրապոլ (այժմ Լենինական)—28.7.1977, Երևան], հայ սովետական պատմաբան-հնագետ: Պատմ. գիտ. դ-ր (1965), պրոֆեսոր (1966): ՍՄԿԿ անդամ 1944-ից: 1938-ին ընդունվել է Երևանի համալսարանի պատմության ֆակուլտետը, 1941-ից մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին, այնուհետև



Հ. Ա. Մարտիրոսյան

ավարտել ընդհատված ուսումը: 1950-ից պեղումներ է կատարել *Գոլովինոյում*, Կարմիր բլուրում, Գառնիում. *Արմավիրում*, հետազոտական աշխատանքներ՝ Լենինականում, Գեղարոտում և այլուր: 1960-ից ղեկավարել է Գեղամա լեռների ժայռապատկերների ուսումնասիրության աշխատանքները, 1962-ից՝ *Արգիշտիխինիլի* քաղաքի պեղումները: Մ-ի հետազոտությունները կարևոր ավանդ են Հայկական լեռնաշխարհի և Անդրկովկասի հնագույն մշակույթի, Ուրարտուի պատմության ուսումնասիրության, ինչպես նաև հնագույն դարաշրջանների ժամանակագրության գիտ. պարբերացման և Հին Արևելքի ժողովուրդների հետ Հայկական լեռնաշխարհի ու Կովկասի հնագույն ցեղերի փոխհարաբերությունների հետազոտման ասպարեզում:

*Երկ.* Ուշ բրոնզեդարյան բնակավայրեր և դամբարանադաշտեր, Ե., 1969 («Հայաստանի հնագիտական հուշարձանները», հ. 2, պր.2): Գեղամա լեռների ժայռապատկերները, Ե., 1971 (հեղինակակից՝ Հ. Ռ. Իսրայելյան, «Հայաստանի հնագիտական հուշարձանները», հ. 6, պր. 2): Հայաստանի նախնադարյան նշանագրերը և նրանց ուրարտահայկական կրկնակները, Ե., 1973: Գիտությունն սկսվում է նախնադարում, Ե., 1978: Армения в эпоху бронзы и раннего железа, Е., 1964; Аргиштихинили, Е., 1974.

*Լ. Պետրոսյան*

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ** Մարիամ Պետրոսի [ծն. 5.1.1925, գ. Չիթհանքով (այժմ՝ Անիի շրջանում)], գյուղատնտեսական արտադրության առաջավոր, գյուղատնտես: Սոցիալիստական աշխատանքի հերոս (1947): Առաջին կին հերոսը ՀՍՍՀ-ում: ՍՄԿԿ անդամ 1951-ից: Ավարտել է Հայկական գյուղատնտ. ինստ-ը (1952): Էջմիածնի շրջանի Մեծամոր գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ (1977-ից): Սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում է շնորհվել անջրդի պայմաններում հացահատիկի բարձր բերք ստանալու համար (40 *ց*՝ *հա*-ից): Եղել է ՍՍՀՄ III գումարման Գերագույն սովետի դեպուտատ:



Մ. Պ. Մարտիրոսյան

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ** Մարուսյա Սահակի (ծն. 29.11.1924, Երևան), հայ սովետական դերասանուհի: ՀՍՍՀ ժող. արտիստուհի (1967): ՍՄԿԿ անդամ 1965-ից: Աշխատել է Երևանի պատանի հանդիսատեսի (1944—1945), Կիրովականի Հ. Աբելյանի անվ. (1946—48), Էջմիածնի (1948—51) և Ալավերդու (1951—53) շրջանային, Լենինականի Մռավյանի անվ.(1953—70) թատրոններում: Լավագույն անձնավորումներից են՝ Մարգարիտ (Շիրվանզադեի «Պատվի համար»), Հասմիկ (Գ. Տեր-Գրիգորյանի «Վերջին մեխակներ»), Ջեսսի (Կ. Սիմոնովի «Ռուսական հարց»), Պոլինա (Ա. Օստրովսկու «Եկամտաբեր պաշտոն»), Լուիզա (Շիլլերի «Սեր և խարդավանք»), Դեզդեմոնա (Շեքսպիրի «Օթելլո»), Մեդեա (Եվրիպիդեսի «Մեդեա»): 1971-ից աշխատում է Երևանի դրամատիկական թատրոնում: Դերերից են՝ Եղիսաբեթ թագուհի (Շեքսպիրի «Ռիչարդ III»), Օգուդալովա (Ա. Օստրովսկու «Անօժիտը»): *Ռ. Փաշայան*

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ** Մաքսիմ Սահակի (ծն. 9.9.1931, Երևան), բալետի հայ սովետական արտիստ և բալետմայստեր: ՌՍՖՍՀ ժող. արտիստ (1973): ՍՄԿԿ անդամ 1963-ից: Ավարտել է Երևանի (1950) և Մոսկվայի (1952) պարարվեստի ուսումնարանները, ինչպես և Մոսկվայի Լունաչարսկու անվ. թատերական արվեստի ինստ-ի բալետմայստերական ֆակուլտետը (1967): 1952-ից եղել է Երևանի օպերայի և բալետի թատրոնի մենապարող (1958—71-ին՝ գլխավոր բալետմայստերը) և Երևանի պարարվեստի ուսումնարանի դասական պարի ուսուցիչ: 1972-ից Մոսկվայի պարարվեստի ուսումնարանի գեղարվեստական մասի վարիչն է և գլխավոր բալետմայստերը: Հրավիրվել է աշխատելու (1977—78-ին) Սան Պաուլուի (Բրազիլիա) բալետային խմբում: Լավագույն բեմադրություններից են՝ Գ. Եղիազարյանի «Անուրջների լիճը» (1968), Կ. Օրբելյանի «Անմահություն», Է. Հովհաննիսյանի «Անտունի» (երկուսն էլ՝ 1969), Ա. Խաչատրյանի «Գայանե» (1970, Վորոնեժում՝ 1971-ին, Ուլան Ուդեում՝ 1973-ին), Չայկովսկու «Շչելկունչիկ» (1977, Վորոնեժ), Դելիբի «Կոպելիա» (1977, Մոսկվա): Մ-ի աշակերտներից են՝ Վ. Գալստյանը, Ա. Մարիկյանը, Ռ. Խառատյանը, Ն. Մեհրաբյանը, Ս. Պետրոսյանը և ուրիշներ:

*Գ. Ստեփանյան*

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ** Նատալյա Արտեմի [2(14). 10.1889, Թիֆլիս —14.6.1960, Երևան], հայ սովետական ինժեներ-շինարար, ՀՍՍՀ վաստ. իռիգատոր (1957): Ավարտել է Պետերբուրգի պոլիտեխնիկական ինստ-ը (1915): Մասնակցել է Շիրակի ջրանցքի նախագծման և կառուցման աշխատանքներին (1922—1925): Մ-ի ղեկավարությամբ են կազմվել Հոկտեմբերյանի ջրանցքի, Այղր լճի ջրհան կայանի և ոռոգման ցանցի, Արփի լճի ջրամբարի և այլ նախագծեր: 1931-ին և 1935-ին ընտրվել է Անդրֆեդերացիայի Կենտգործկոմի անդամ (VI և VII գումարումների): Պարգևատրվել է Լենինի և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով:

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ** Նշան [1894, գ. Խունձավիլ (Խարբերդի գավառում) —1966, Պրագա], ափրիկաքահայ արևելագետ: Միջնակարգ դպրոցն ավարտել է Ավստրիայում: 1920—26-ին սովորել է Պրագայի համալսարանի փիլ. ֆակուլտետում, որտեղ, աշակերտելով արևելագետ Բ. *Հրոզնիին*, մասնագիտացել է արևելագիտական առարկաների (շումերերեն, աքքադերեն, ասորերեն, խեթերեն և Փոքր Ասիայի պատմություն) գծով: 1927-ին հրավիրվել է Պրագայի համալսարան որպես դասախոս: Իր աշխատություններում Մ. անդրադարձել է հայերենի ծագումնաբանությանը, դիցաբանությանը, աշխարհագրությանը, փոքրասիական հնագույն ժողովուրդների և հայերի առնչություններին (Հայերենի հարաբերությունը հեթիդերենի հետ, «ՀԱ», 1924, № 9—10, 1926, № 7—8, Հայ տեղանունների շուրջը, «Կյանք և գիր», 1948, Հայոց հնագույն օրրանը, տես Վ ա հ ե Հ ա յ կ. Խարբերդ և անոր ոսկեղեն դաշտը, 1959, էջ 87—166), Հայաստանի քաղ. վիճակին, տեղագրությանը, ցեղային ծագմանը, լեզվին, գրին. բարքերին ու արվեստին: Գերմ. և չեխ. է թարգմանել հայ գրականության չափածո և արձակ նմուշներ: 1963-ին լույս է տեսել «Գիլգամեշ» դյուցազնավեպին նվիրված Մ-ի աշխատությունը: *Խ. Կարապետյան*

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ** Սարգիս Սողոմոնի [ծն. 21.9.1900, գ. Մադրասա (այժմ՝ Ադրբ. ՍՍՀ Շամախու շրջանում)], գեներալ-լեյտենանտ (1945): Սովետական Միության հերոս (10.5.1945): ՍՄԿԿ անդամ 1925-ից: Նախնական կրթությունն ստացել է ծննդավայրում, ապա՝ Էջմիածնի Գևորգյան ճեմարանում: 1917-ի մայիսին մտել է Բաքվի կարմիր գվարդիայի շարքերը: Հայաստանում սովետական իշխանություն հաստատվելուց հետո մտել է կարմիր բանակի շարքերը, 1922-ին հայկ. հրաձգային դիվիզիայում նշանակվել գնդացրային դասակի հրամանատար: 1928-ին ավարտել է ԲԳԿԲ գլխավոր շտաբի Մոսկվայի բարձրագույն զինվորական դասընթացները և դարձել կադրային սպա: 1924—38-ին 76-րդ հայկ. լեռնա-հրաձգային դիվիզիայում վարել է տարբեր պաշտոններ (վաշտի հրամանատար, գնդի շտաբի պետի տեղակալ՝ հետախուզու-

Ս. Ս. Մարտիրոսյան

թյան գծով, դիվիզիայի շտաբի հետախուզական բաժնի պետ ևն):

Հայրենական պատերազմի սկզբին Մ. Հարավային ռազմաճակատում 227-րդ հրաձգային դիվիզիայի շտաբի պետն էր, Մոսկվայի համար մղված մարտերում՝ 340-րդ հրաձգային դիվիզիայի հրամանատարը: Նրա հրամանատարությամբ դիվիզիան մարտնչել է Վորոնեժի ռազմաճակատում: 1943-ի հուլիսին Մ. նշանակվել է կորպուսի հրամանատար՝ 1-ին Ուկրաինական ռազմաճակատի կազմում (կորպուսը մասնակցել է Կորսուն-Շևչենկովսկի խմբավորման ոչնչացման մարտերին, Յասսի—Քիշնևյան օպերացիային, Լեհաստանի, Ռումինիայի ազատագրմանը, Վիսլա—Օդերյան, Բեռլինյան օպերացիաներին և Չեխոսլովակիայի ազատագրմանը): Կորպուսի կազմում մի քանի ամիս մարտական գործողություններին մասնակցել է Սովետական Միությունում կազմակերպված չեխոսլովակյան առաջին բրիգադը՝ գեն. Լ. *Սվոբոդայի* հրամանատարությամբ: Հերոսի կոչման է արժանացել գերմ. զավթիչների դեմ մղված պայքարում հրամանատարության մարտական առաջադրանքները օրինակելիորեն կատարելու և ցուցաբերած խիզախության համար: Մ. եղել է նոր ազատագրված Կիև քաղաքի կայազորի առաջին պետը: 1947-ին նշանակվել է հրաձգային զորամասի հրամանատար Մերձկարպատյան ռազմ. օկրուգում: 1950-ին փոխադրվել է Անդրկովկասյան ռազմ. օկրուգ, որպես զորամասի հրամանատարի տեղակալ: 1953-ին զորացրվել և ապրում է Երևանում: Մ. Սովետա-չեխոսլովակյան բարեկամության ՍՍՀՄ ընկերության վարչության նախագահի տեղակալն է, նույն ընկերության՝ Հայաստանի բաժանմունքի նախագահը: Մ. 6 քաղաքների, այդ թվում՝ Կիևի և Պրագայի պատվավոր քաղաքացի է: Պարգևատրվել է Լենինի 4, Կարմիր դրոշի 4, Սուվորովի 2-րդ աստիճանի 2 և 9 արտասահմանյան (լեհ., չեխոսլովակյան, ֆրանս., իտալ., ամերիկյան, ռում.) շքանշաններով ու մեդալներով: *Ե. Խալեյան*

**ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆՆԵՐ** (Մարտիրոսաշվիլի), Շանշյան-Մարտիրոսյաններ, հայ իշխանական տոհմ Վրաստանում XVII—XIX դարերում: Մինչև XVIII դ. վերջը վրաց արքունիքում ժառանգաբար վարել են դատավոր-դպիրի (մդիվանմծիգնոբարի), այնուհետև, նաև՝ դարպասպետի, գանձապետի և այլ պաշտոններ: Արդեն XVII դ. սկզբին Մ-ի ներկայացուցիչ Մարտիրոսի որդի Ավթանդիլը դպիր և դատավոր էր: 1628-ի վավերագրերում հիշատակվում են նրա եղբայրներ Շանշեն, Շալվան: Վերջինիս որդի Սուլխանը 1658-ից հիշվում է արքունի դատավոր: Շանշեի որդի Ավթանդիլն իր որդիներ Սուլխանի ու Բեգթաբեգի հետ 1656-ին որպես ժառանգական տիրույթ է ստացել Սոմանների գյուղը: Մ-ի տիրույթներն ավելի են մեծացել հետագայում. կալվածքներ ունեին Միջին Քարթլիում, Ալի գետի հովտում (Նաբախտևի, Աձվիս գյուղեր, նաև տիրույթներ Ուժլև, Դումացխո, Վակա, Մոխիս գյուղերում): Մ-ից առավել նշանավոր է Ավթանդիլի որդի Բեգթաբեգը, որը դպիր-դատավոր է եղել 1661—97-ին և 1680-ին պատկերազարդել Շոթա Ռուսթավելու «Ընձենավորը»: XVII դ. վերջից Մ. հանդես են գալիս նաև Շանշյան-Մարտիրոսյան կրկնակի ազգանվամբ, իսկ XVIII դ. սկզբներից նույն Բեգթաբեգի ճյուղը կրում է Բեգթաբեգյան (Բեգթաբեգաշվիլի) ազգանունը (տես *Բեկթաբեկյաններ*):

Մ-ից սերվող դպիրների և նրանց գործունեության տարիները. Ավթանդիլ — 1610—61, Շալվա —1634—64, Սուլխան— 1658—59, Բեգթաբեգ—1661—97, Զաքարիա —1667—88, Ավթանդիլ — 1694—1718, Բեգթաբեգ —1713—49, Կարան — 1723—52, Եսայի (Եսավ) Մարտիրոսյան (Բեգթաբեգյան)—1730—34, Ավթանդիլ Բեգթաբեգյան —1778, Սուլխան՝ Բեգթաբեգի որդի —1766—80, Սողոմոն Շանշյան-Մարտիրոսյան — 1768—1801, Բեգթաբեգ Բեգթաբեգյան —1778—1805, Հովհաննես Բեգթաբեգյան — 1783— 1816, Եսայի (Եսավ) Բեգթաբեգյան —1774—1820:

*Գրկ.* Меликсет-Беков Л. М., Усыпальница кн. Бегтабеговых, Тифлис, 1914. *Վ. Մարտիրոսյան*

**ՄԱՐՏԻՐՈՍՈՒԹՅՈՒՆ** (հուն. μάρτυρος— նահատակ, վկա բառից), նահատակություն, ինքնազոհություն հանուն քրիստոնեական հավատի: I—IV դդ. (քրիստոնեությունը մինչև պաշտոնական կրոն հռչակելը) հալածվող քրիստոնյաներից առավել մոլեռանդները, մերժելով ուրացումը, գերադասել են Մ.: Եկեղեցին Մ. դիտել է «արյամբ մկրտություն», մարտիրոսներին «խոստանալով երկնային երանելի կյանք», իսկ Մ-յան օրը հռչակելով մարտիրոսի «ծննդյան օր», այն մտցրել է իր տոնացույցներում: IV դ. մարտիրոսների թիվն արդեն այնքան շատ է եղել, որ եկեղեցին հարկադրված սահմանել է նրանց հիշատակի միասնական օր: Եկեղեցու հայրերը, մարտիրոսների աճյունները կամ նրանց մասունքները ամփոփելով մատուռներում, վկայարաններում և այլուր, սահմանել են դրանց երկրպագությունը՝ եկամուտներ գանձելով ուխտավոր հավատացյալներից: Մարտիրոսների մասին կան բազմաթիվ վարքաբանություններ, վկայաբանություններ, որոնք բովանդակում են նրանց կյանքի, չարչարանքների ու Մ-յան չափազանցված պատմություններ:

Փոխաբերական առումով Մ. են անվանում նաև հայրենիքի, նվիրական գաղափարի համար նահատակությունը:

**ՄԱՐՏԿՈՑ**, մի քանի միատիպ սարքերի, ապարատների, կառույցների, հարմարանքների միացում որոշակի համակարգում՝ համատեղ գործողության համար: Օրինակ, կուտակիչային Մ-ները հաջորդաբար կամ զուգահեռ միացված էլեկտրական կուտակիչներ են՝ պահանջվող էլեկտրական լարում և հոսանքի ուժ ստանալու համար, կոքսային Մ. վառարանների շարք է քարածուխը չոր թորմամբ կոքսի վերածելու համար, հովացնող Մ-ները կողավորված կամ հարթ խողովակներ են, որոնց մեջ գոլորշիանում է սառնագենտը, կամ հոսում սառնարանային լուծույթը:

**ՄԱՐՏԿՈՑ** ռազմական, հրետանու հիմնական կրակային և մարտավարական ստորաբաժանում: Սկզբնապես «Մ.» նշանակել է առաջավոր գծում տարբեր քանակությամբ հրանոթների տակտիկական միավորում: XIX դարից դարձել է որպես ռազմավարական և վարչական մշտական միավոր: Ժամանակակից բանակներում Մ. կազմված է 2—3 կրակային դասակներից և ունի 2—6 հրանոթ (ականանետ, ռեակտիվ հրետանու մարտական մեքենա կամ հակատանկային ղեկավարվող հրթիռ): Մարտում հիմնականում գործում է հրետանային դիվիզիոնի կազմում: Մ-ները լինում են դաշտային, լեռնային, հակաօդային, առափնյա, հակատանկային: *Մ. Կարապետյան*

**«ՄԱՐՏՆՉՈՂ ԱՆԱՍՏՎԱԾՆԵՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆ»** (**ՄԱՄ**), հասարակական հակակրոնական կազմակերպություն ՍՍՀՄ-ում: 1924-ին Մոսկվայում կազմավորվել է «Բեզբոժնիկ» («Безбожник», 1922—41) թերթի շուրջ համախմբված մարդկանց աթեիստական ընկերություն՝ «Բեզբոժնիկ» թերթի բարեկամների ընկերությունը: 1925-ին կայացած ընկերության 1-ին համագումարը հիմնադրեց Անաստվածների միությունը, երկրորդ համագումարը (1929)՝ Մ. ա. մ.: Մ. ա. մ-յան հիմնական խնդիրն էր՝ գաղափարական պայքար մղել կրոնի դեմ, կազմակերպել հակակրոնական շարժում: Այդ նպատակով միությունը ծավալել է աթեիստական պրոպագանդա, ստեղծել թանգարաններ ու ցուցահանդեսներ, հրատարակել գիտ. ու գիտահանրամատչելի գրականություն, պարբերականներ: 1941-ին Մ. ա. մ. ընդգրկել է մոտ 3,5 մլն անդամ: Հիմնարկներում, ձեռնարկություններում, կազմակերպություններում և ուս. հաստատություններում Մ. ա. մ. ունեցել է իր բջիջները: Միության աշխատանքները ղեկավարել են ՍՄԿԿ գործիչներ Ե. Մ. Յարոսլավսկին, Պ. Ա. Կրասիկովը, Ն. Կ. Կրուպսկայան, Ա. Վ. Լունաչարսկին, Ի. Ի. Սկվորցով-Ստեպանովը և ուրիշներ:

1927-ին Անաստվածների միության բջիջ է կազմակերպվել նաև ՀՍՍՀ-ում (Արտաշատի շրջանի Բուրաստան գյուղում): 1928-ին միության առաջին համագումարը հաստատել է միության կանոնադրությունը, ընտրել կենտրոնական խորհուրդ: 1929-ին հիմնադրվել է ՀՍՍՀ Մ. ա. մ., որի աշխատանքներին մասնակցել են Հ. Գյուլիքևխյանը, Հ. Ազատյանը, Գ. Վանանդեցին, Դ. Դզնունին, Հ. Մելիքյանը, Պ. Թոռոսյանը, Վ. Մնացականյանը, Վ. Թաթիկյանը, Է. Չոփուրյանը, Մ. Բաղդասարյանը: Միությունը հրատարակել է «*Անաստված*» (1928—34) հանդեսը:

Մ. ա. մ. ղեկավարվել է «կրոնի դեմ պայքարը՝ պայքար է հանուն սոցիալիզմի» նշանաբանով, հենվելով ՍՄԿԿ որոշումների և գիտական աթեիզմի սկզբունքների վրա: Միության անդամները ակտիվորեն մասնակցել են սոցիալիզմի կառուցման, նոր կենցաղի ստեղծման, կուլտուր-լուսավորական աշխատանքներին: Մ. ա. մ. մեծ ավանդ է ներդրել մասսայական աթեիզմի ծավալման, աթեիստական աշխատանքներին գիտական բովանդակություն տալու գործին: Աթեիստական պրոպագանդայի մեթոդներից շատերը մշակել են Մ. ա. մ-յան անդամները:

Մ. ա. մ-յան գործունեությունը դադարեցվել է 1941-ին, իսկ 1947-ից նրա պարտականությունները տրվել են «Գիտելիք» ընկերությանը: *Թ. Իսայան*

**«ՄԱՐՏՆՉՈՂ ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄԻ ՆՇԱՆԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ»**, Վ. Ի. Լենինի հոդվածը: Գրվել է 1922-ին, «Պոդ զնամենեմ մարկսիզմա» («Под знаменем марксизма») ամսագրի համար (1922, № 3): Աշխատությունը մարքսիստ փիլիսոփաների և ՍՄԿԿ տեսական գործունեության յուրատեսակ ծրագիր էր և քննարկում էր այն խնդիրները, որոնք բխում էին սոցիալիստական շինարարության պահանջներից: Հոդվածը հիմնավորում է մարքսիստ-փիլիսոփաների և բնագիտության ներկայացուցիչների, մարքսիստական փիլիսոփաների և հետևողական, բայց ոչ կոմունիստ մատերիալիստների դաշինքի, մատերիալիզմի, աթեիզմի մատերիալիստական ավանդույթների պրոպագանդման, իդեալիստական տեսությունների և բուրժ. գաղափարախոսության դեմ պայքարի անհրաժեշտությունը: Մատերիալիզմի բնորոշ հատկանիշ է համարվում նրա մարտնչող էությունը: Աշխատության մեջ հետագա զարգացում են ստացել մարքսիստական աթեիզմի սկզբունքները: Հատուկ նշանակություն է տրվել մարտնչող աթեիզմի ստեղծմանն ու պրոպագանդմանը, մասսաներին աթեիստական, կոմունիստական ոգով դաստիարակմանը, հավատացյալների հետ տարվող աշխատանքների եղանակների բազմազանությանը, կրոնի նկատմամբ գիտակցական վերաբերմունք ունենալուն ևն: «Մ. մ. ն. մ»-ում առաջ քաշված պրոբլեմները ցայսօր պահպանում են իրենց մեթոդաբանական նշանակությունը: *Թ. Իսայան*

**ՄԱՐՏՈՆ** (Martonne) Էմանյուել դը (1873—1955), ֆրանսիացի աշխարհագրագետ, «մարդու աշխարհագրության» ֆրանսիական դպրոցի ներկայացուցիչ, Փարիզի ԳԱ անդամ (1942): Սորբոնի համալսարանի պրոֆեսոր (1909-ից): 1938—52-ին՝ Միջազգային աշխարհագրական միության պրեզիդենտ (1952-ից՝ պատվավոր պրեզիդենտ): ՍՍՀՄ Աշխարհագրական ընկերության պատվավոր անդամ (1933-ից): Դաշտային հետազոտություններ է կատարել Ֆրանսիայում, Ռումինիայում և եվրոպական այլ երկրներում, ինչպես նաև Հյուսիսային Աֆրիկայում, Հյուսիսային և Հարավային Ամերիկայում: Նշանակալից ներդրում է կատարել ֆիզիկական աշխարհագրության հիմունքների, գեոմորֆոլոգիայի, կլիմաների դասակարգման, ֆիզիկա-աշխարհագրական երկրագրության ուսումնասիրության մեջ: Հիմնական աշխատանքները վերաբերում են ընդհանուր և ռեգիոնալ (տեղանքային) ֆիզիկական աշխարհագրությանը:

**ՄԱՐՏՈՍ** Իվան Պետրովիչ (1754—1835), ռուս քանդակագործ: 1764—73-ին սովորել է Պետերբուրգի Գեղարվեստի ակադեմիայում, 1773—79-ին՝ Հռոմի Գեղարվեստի ակադեմիայի թոշակառու: Ռուսաստան է վերադարձել որպես *կլասիցիզմի* համոզված հետևորդ: Իր ստեղծագործություններում քաղաքացիական պաթոսը զուգորդել է կերպարների վեհության, կոմպոզիցիայի խստության, քանդակաձևերի պլաստիկության հետ: Մ-ի մահարձանները աչքի են ընկնում խոր քնարականությամբ, պլաստիկական լուծումների նրբագեղությամբ (Ս. Ս. Վոլկոնսկայայի մահարձանը, մարմար, 1782, Տրետյակովյան պատկերասրահ): Մ. մոնումենտալ-դեկորատիվ քանդակի նշանավոր ռուս վարպետ է («Ակտեոն» արձանը, բրոնզ, 1801, ստեղծվել է Պետերգոֆի Մեծ կասկադի համար): 1804-ից աշխատել է իր հանրահայտ ստեղծագործության՝ Կ. Մինինի և Դ. Պոժարսկու հուշարձանի վրա (Մոսկվայի Կարմիր հրապարակ, բրոնզ, գրանիտ, բացումը կատարվել է 1818-ին). կերպարներն օժտված են քաղաքացիական պաթոսով, հայրենիքի հանդեպ պարտքի մեծ զգացողությամբ: Մ. նաև ստեղծել է Է. Ռիշելյեի (1823—28, բրոնզ, գրանիտ, Օդեսա) և այլ հուշարձաններ: Որպես Գեղարվեստի ակադեմիայի պրոֆեսոր (1779-ից) և ռեկտոր (1814-ից) դաստիարակել է XIX դ. 1-ին կեսի բազմաթիվ ռուս քանդակագործներ:



Ի. Պ. Մարտոս. Ի. Լ. Լազարևի դիմաքանդակը, բրոնզ (Հայաստանի պետական պատկերասրահ, Երևան)

*Գրկ.* Алпатов М. В., Мартос, в кн: Русское искусство 18 в., М., 1958.

**ՄԱՐՏՈՎ Լ.** (իսկական ազգանունը և անունը՝ Ցեդերբաում Յուլի Օսիպովիչ, 1873—1923), ռուս սոցիալ-դեմոկրատ, *մենշևիկյան* առաջնորդներից: 1895-ին մասնակցել է *Պետերբուրգի «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միության»* ստեղծմանը: 1899-ին միացել է *«Էկոնոմիզմ»*-ի դեմ Վ. Ի. Լենինի գրած «Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատների բողոք»-ին: 1900-ին եղել է *«Իսկրա»*-ի հրատարակումը նախապատրաստող խմբի անդամ: 1901-ին տարագրվել է. եղել է «Իսկրա» («Искра») և «Զարյա» («Заря») թերթերի խմբագիրներից: ՌՍԴԲԿ II համագումարում (1903) հանդես է եկել կուսակցության կառուցվածքի լենինյան կազմակերպական պլանի դեմ: 1905-ին ընտրվել է Պետերբուրգի սովետի անդամ: 1907-ից տարագրվել է: ՌՍԴԲԿ V համագումարի պատգամավոր, ռեակցիայի տարիներին (1908—10)՝ լիկվիդատոր, մասնակցել է *օգոստոսյան հակակուսակցական բլոկին* (1912), Ցիմմերվալդի (1915) և Կինտալի (1916) կոնֆերանսներին: 1917-ին վերադառնալով Ռուսաստան՝ գրավել է «Ձախ» դիրքորոշում մենշևիկյան կուսակցության մեջ: Հոկտեմբերյան հեղափոխությունից (1917) հետո դեմ է եղել հակահեղափոխական դավադրությունների մասնակիցների ձերբակալմանը, բուրժ. թերթերի փակմանը, Սահմանադիր ժողովի ցրմանը ևն: Սովետների համառուսաստանյան VII համագումարի պատգամավոր (մենշևիկների կողմից, 1919), որտեղ ընտրվել է Համառուս. ԿԳԿ-ի անդամ, 1919—20-ին՝ Մոսսովետի դեպուտատ: 1920-ին մեկնել է արտասահման: Եղել է *«Ինտերնացիոնալ $2^{1}/_{2}$»*-ի կազմակերպիչներից, հիմնել և խմբագրել է «Սոցիալիստիչեսկի վեստնիկ» («Социалистический вестник») մենշևիկյան հակակոմունիստական օրգանը:

**ՄԱՐՏՈՒՆԱՇԵՆ**, հայաբնակ գյուղ Ադրբեջանական ՍՍՀ Խանլարի շրջանում, շրջկենտրոնից 29 *կմ* հարավ-արևելք: Սովետական տնտեսությունն զբաղվում է անասնապահությամբ և բանջարաբուծությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, կինո, գրադարան, բուժկայան: Մ-ում կա եկեղեցի: Գյուղից 800 *մ* հվ. պատմական Դուլուս գյուղի ավերակներն են՝ գերեզմանոցով և կիսավեր եկեղեցով: Դուլուսից մոտ 2 *կմ* հվ. են Միջին վանքը՝ կիսավեր եկեղեցով և Ջորի խաչ քարաժայռերը: Մ-ում է ծնվել Սովետական Միության հերոս, գվարդիայի ավագ լեյտենանտ Վ. Զաքարյանը:

**ՄԱՐՏՈՒՆԻ** (հնում՝ Մեծ Կզնուտ, 1830—1922-ին՝ Ներքին Ղարանլուղ, 1926-ից՝ Մարտունի), քաղաքատիպ ավան (1963-ից), Հայկական ՍՍՀ *Մարտունու շրջանի* վարչական կենտրոնը: 10400 բն. (1981): Գտնըվում է Սևանա լճի հվ-արմ. ափին, Վարդենիսի լեռների հս. ստորոտում: Հեռավորությունը մոտակա «Վարդենիս» երկաթուղային կայարանից 44 *կմ* է, Երևանից՝ 130 *կմ*: Նախասովետական շրջանում բնակիչները զբաղվել են երկրագործությամբ, անասնապահությամբ ու ձկնորսությամբ: Արդյունաբերություն չի եղել: Այժմ տնտեսության գլխավոր ճյուղը արդյունաբերությունն է: Կան էլեկտրատեղակայման



Մարտունի ավանի մուտքի արձանը



Մ ա ր տ ո ւ ն ի. Կենտրոնական հրապարակը մշակույթի տան և կապի հանգույցի շենքերով

իրերի, պահածոների, հացի գործարաններ, սննդի կոմբինատ: Գործում են «Հայգորգ» և «Սոււոակ» արտադրական միավորումների մասնաճյուղերը, գլխավորող պանրագործարանը, Հայկ. ՍՍՀ ԳԱ երկրագործության ԳՀԻ-ի փորձակայանը, շինարարական տրեստ, 2 շարժական մեքենայացված շարասյուն, ավտոբազա, մեխանիզացիայի արտադրական բազա (թողարկում է շինարարական իրեր և կոնստրուկցիաներ), Հայկոոպշին վարչությունը ևն: Մինչև սովետական կարգերը Մ-ում գործել է մեկ չորսդասյա դպրոց: 1981—82-ին Մ-ում կային 4 միջնակարգ, մարզական, երաժշտական, նկարչական դպրոցներ, ինդուստրիալ տեխնոլոգիական տեխնիկում, պրոֆ-տեխ. ուսումնարան, 5 մսուր-մանկապարտեզ: Գործում են շրջանային հիվանդանոցը (190 մահճակալով), պոլիկլինիկա, մանկական և



Տեսարան Մարտունի ավանից

կանանց կոնսուլտացիաներ, սանիտարահակահամաճարակային կայան, Մարտունու հակաժանտախտային բաժանմունքը, դեղատուն, կուլտուրայի տուն (կից գործում է ժող. պարի անսամբլը), պատկերասրահ, գրադարաններ, կինոթատրոն, տպարան, կապի հանգույց և բաժանմունք, ավտոմատ հեռախոսակայան, «Մարտունի» հանգստյան տունը: Կա կարտոֆիլաբուծական, կաթնաանասնապահական սովետական տնտեսություն:

Մ-ի առաջին գլխավոր հատակագիծը կազմվել է 1966-ին (ճարտ-ներ՝ Ա. Միրիջանյան, Մ. Սաֆրաստյան), ըստ որի Մ-ու տարածքն են ներառվելու Վաղաշեն և Ներքին Գետաշեն գյուղերը՝ նախատեսելով զգալի. քանակի բնակելի, կուլտուր-կենցաղային և արտադրական շենքերի շինարարություն: Մ-ում և շրջակայքում պահպանվել են եկեղեցի («Աստվածածին», վերակառուցված 1886-ին), զերեզմանոց խաչքարերով (XV—XVII դդ.), ձիթհան, Վանք սրբատեղի (վերակառուցված XX դ.), կիկլոպյան ամրոցի (մ. թ. ա. I հազարամյակ) մնացորդներ, հնագույն բնակատեղի (մ. թ. ա. II—I հազարամյակ): Անվանումն ստացել է Ա. Մյասնիկյանի «Մարտունի» հեղափոխական ծածկանունից: *Դ. Հովհաննիսյան*

**ՄԱՐՏՈՒՆԻ**, գյուղ Հայկական ՍՍՀ Կրասնոսելսկի շրջանում, Գետիկ գետի ձախ ափին, շրջկենտրոնից 11 *կմ* հյուսիսարևելք: Անասնապահական-կարտոֆիլաբուծական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի ութամյա դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կապի բաժանմունք, կինո, մանկապարտեզ, բուժկայան: Գյուղի շրջակայքում պահպանվել



Մարտունի

են գյուղատեղիներ, ամրոցներ (մ. թ. ա. I հազարամյակ, Աղջաղալա՝ միջնադար), եկեղեցիներ, խաչքարեր (միջնադար): Գյուղն անվանումն ստացել է ի պատիվ Ա. Մյասնիկյանի (Մարտունի):

**ՄԱՐՏՈՒՆԻ**, քաղաքատիպ ավան, Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտունու շրջանի վարչական կենտրոնը: Գտնվում է Ղարաբաղի լեռնաշղթայի արլ. լանջին, Ստեփանակերտից 41 *կմ* արևելք: Կոլտնտեսությունն զբաղվում է անասնապահությամբ, հացահատիկի և բանջարանոցային կուլտուրաների մշակությամբ: Կա խաղողագործական սովետական տնտեսություն: Ունի 2 միջնակարգ, գիշերային, ութամյա, երաժշտական դպրոցներ, 2 գրադարան, կինոթատրոն, մշակույթի պալատ, հիվանդանոց, կապի բաժանմունք, 2 մանկապարտեզ, շերամի սերմնամթերման կետ, ջրմուղ-կոյուղի, կենցաղսպասարկման կոմբինատ: Մ-ում է տպագրվում «Աշխատանք» շրջանային լրագիրը: Մ-ում կան նեոլիթի, բրոնզի դարի դամբարաններ, շրջակայքում՝ միջնադարյան խոշոր բնակատեղիներ, գերեզմանոցներ, կիսաքանդ եկեղեցիներ, խաչքարեր:

**ՄԱՐՏՈՒՆԻ**, հայաբնակ գյուղ Վրացական ՍՍՀ Ախալքալաքի շրջանում: Միավորված է Վաչիանի սովետական տնտեսությանը: Զբաղվում են երկրագործությամբ և անասնապահությամբ: Գյուղում գործում է ութամյա դպրոց: Մ-ի հայերը գաղթել են Արևմտյան Հայաստանի Էրզրումի նահանգից, 1830-ին:

**ՄԱՐՏՈՒՆԻ** (ն. Գոլիցինո, Ղազախաշեն), հայաբնակ գյուղ Ադրբեջանական ՍՍՀ Շամխորի շրջանում, Խաչի սար լեռան լանջին, շրջկենտրոնից 25 *կմ* հարավ: Միավորված է Ջագիրի և Սպիտակշենի սովետական տնտեսությունների հետ: Ունի միջնակարգ դպրոց, գրադարան: Գյուղը հիմնադրվել է XIX դ. վերջերին և կոչվել Անդրկովկասի կառավարչապետ Գոլիցինի անունով: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո գյուղում բնակություն են հաստատում Գետաբեկի ղղնձահանքերի մոտ գտնվող Ղազախաշենի բնակիչները և անվանում Ղազախաշեն: Ի հավերժացումն Ա. Մյասնիկյանի (Մարտունու) հիշատակի՝ 1926-ին գյուղը վերանվանվում է Մ.: Մ-ում է ծնվել ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Ծ. Աղայանը:

**ՄԱՐՏՈՒՆՈՒ ՇՐՋԱՆ**, վարչական շրջան Հայկական ՍՍՀ-ում, Սևանա լճի հարավ-արևմուտքում: Կազմավորվել է 1930-ի սեպտ. 9-ին: Տարածությունը 1185 *կմ²* է, բն. 71727 մարդ (1981): Վարչական կենտրոնը՝ Մարտունի:

**Բնական պայմանները**: Շրջանի տարածքը զբաղվում է Գեղամա լեռնաշղթայի հվ-արլ., Վարդենիսի լեռնաշղթայի հս. լանջերը մինչև Սևանա լիճը: Գտնվում է 1900—3000 *մ* բարձրությունների վրա, 7—9-բալանոց սեյսմիկ գոտում: Առավելագույն բարձրությունը 3522 *մ* է (Վարդենիս լեռ): Սևանա լճի ափամերձ գոտին ունի հարթ մակերևույթ: Դեպի հվ. տեղանքն աստիճանաբար բարձրանում և կտրտվում է կիրճերով ու գետահովիտներով: Հվ-արմ-ում է Արգիճիի ճահճապատ գոգավորությունը (համանուն գետի վերին հոսանքում): Բնորոշ են հրաբխային կոները (Արմաղան լեռ, 2830 *մ* ևն): Վարդենիսի լեռնաշղթայի հս. լանջերին տեղ-տեղ կան բրգաձև ժայռեր: Տարածված են անդեզիտա-բազալտների և անդեզիտադացիտների լավային ծածկույթներ, Սևանա լճի ափամերձ շրջանում՝ գետային և լճային նստվածքներ: Կան բազալտի (Գեղհովիտ, Ջոլաքար), պեռլիտի (Զորագյուղ), հրաբխային խարամի (Վարդենիկ), քվարցային ավազի (Ծովինար) հանքավայրեր: Շրջանի տարածքով է «Արփա—Սևան» հիդրոտեխ. համալիրի հս. մասը:

Մ. շ. ունի չափավոր ցուրտ կլիմա: Առկա է բնակլիմայական պայմանների ուղղաձիգ գոտիականությունը: Ցածրադիր վայրերում ջերմաստիճանը 5—10°C-ով բարձր է բարձրադիր վայրերի ջերմաստիճանից: Քամիները հիմնականում փչում են հվ-արմ-ից, առավելագույն արագությունը աշնան, ձմռան և գարնան սկզբներին՝ 25—30 *մ/վրկ*: Տարեկան միջին ջերմաստիճանը ցածրադիր վայրերում 6°C է, բարձրադիր վայրերում՝ −4°C, հունվարինը՝ համապատասխանաբար −5°C, −14°C, հուլիսինը՝ 16°C, 10°C, առավելագույնը՝ 32°C, 22°C, նվազագույնը՝ −30°C, −42°C, տարեկան տեղումները՝ 400—900 *մմ* (առավելապես մայիս—հունիսին): Ձնածածկույթի միջին բարձրությունը 15—25 *սմ* է, առանձին տարիներին՝ 40—50 *սմ*, լեռնային վայրերում՝ ավելի քան 1 *մ*: Շրջանի տարածքով հոսում են Արգիճի, Ծակքար, Մարտունի և Վարդենիկ գետերը: Կան բազմաթիվ աղբյուրներ, Լիճք գյուղի մոտ՝ հանքային ջրեր: Գերակշռում են համապատասխան բուսածածկույթով լեռնամարգագետնային, ցածրադիր վայրերում՝ լեռնատափաստանային սևահողերը: Սևանա լճի ջրերից ազատված տարածություններում (մոտ 5 հզ. *հա*) կատարվում են անտառատնկումներ: Կենդանական աշխարհին բնորոշ են գայլը, աղվեսը, նապաստակը, դաշտային մուկը ևն:

**Բնակչությունը**: Բնակվում են հայեր: Խտությունը 1 *կմ²* վրա 60,5 մարդ է: Խիտ

է բնակեցված լճափնյա հարթավայրային շրջանը: Շրջանում կա 19 բնակավայր (1 քտա, 18 գյուղ): Բնակավայրերի մեծ մասը գտնվում են ավելի քան 2000 *մ* բարձրությունների վրա:

**Պատմական ակնարկ**: Մ. շ-ի տարածքը հնում կազմում էր Մեծ Հայքի Սյունիքի նահանգի Գեղարքունիք գավառի մասը: Երբեմն մտել է Այրարատ նահանգի մեջ: IX դ. այն գրավել է Արցախի իշխան Տեր-Սահլ Սմբատյանը: IX—XI դդ. Կոթը (Ներքին Գետաշեն) եղել է Սևանի ավազանի վարչական կենտրոնը և միավորել է գավառակները: Գտնվելով Դվին—Պարտավ ճանապարհի վրա, Կոթը IX—X դդ. դարձավ Գեղամա երկրի առևտրական կարևոր կենտրոններից մեկը, որի զարգացմանը նպաստում էր նաև ձկնորսությունը: XI—XII դդ. շրջանի տարածքն անցել է թուրք սելջուկների տիրապետության տակ: XII դարից եղել է Վերին Խաչենի տերերի իրավասության տակ: Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միանալուց (1828) հետո Ալաշկերտից, Մուշից, Դիադինից և Իգդիրից մոտ 600 հայ ընտանիք (5000 բն.) ներգաղթել և բնակություն են հաստատել Մ. շ-ի տարածքում: Շրջանի տարածքը Ներքին Ղարանլուղի գավառակ անվամբ, Նոր Բայազետի և Սոթքի գավառների հետ միասին, կազմել է Գեղարքունիք գավառը և մտել Երևանի նահանգի մեջ:

Մ. շ. հարուստ է հնագիտական ճարտ. հուշարձաններով: Պահպանվել են բրոնզեդարյան դամբարաններ, կիկլոպյան ամրոցներ (Աստղաձոր, Գեղհովիտ, Ներքին Գետաշեն, Երանոս, Վաղաշեն, Վարդենիկ, Զոլաքյուղ, Մարտունի, Արծվանիստ) և ժայռապատկերներ (Սև սար լեռ): Պահպանվել են մ. թ. ա. 722—705-ի ուրարտական արձանագրություններ (Ծովինար, Վարդաձոր) և նախնադարյան դամբարաններ (Ջոլաքար): Հայ միջնադարյան ճարտարապետության Սյունիքի դպրոցի լավագույն հուշարձաններից են Կոթավանքը (IX դ., Ներքին Գետաշեն), Շողագավանքը (V—IX դդ.) և Մասրուց անապատը (IX դ., Զոլաքյուղ), Թազագյուղի եկեղեցին (IX դ.), Վանեվանը (X դ., Արծվանիստ): Շրջանում պահպանվել են ուշ միջնադարի բնակատեղիներ և արտադրական կառույցներ (ձիթհանքեր): Մոնումենտալ արվեստի արժեքավոր կոթողներ են Աստղաձորի, Արծվանիստի, Ջոլաքարի, Ներքին Գետաշենի, Թազագյուղի, Լիճքի խաչքար-հուշարձանները (XIII դ.):

Բոլշևիկյան առաջին բջիջներն ու կազմակերպությունները Մ. շ-ում ստեղծվել են 1919—20-ին՝ Ներքին Ղարանլուղ (Մարտունի), Վերին Ղարանլուղ (Գեղհովիտ), Ալիղոըխ (Աստղաձոր), Ներքին Գյոզալդարա (Վարդենիկ), Ջոլախաչ (Ջոլաքար), Վերին Աղյաման (Վերին Գետաշեն) գյուղերում: Նրանց աշխատանքը գլխավորում էր Նոր Բայազետի գավառային կոմիտեն: 1920-ի մայիսի 12-ին Ներքին Ղարանլուղում բռնկվեց զինված ապստամբություն, որը ղեկավարում էր Հովհաննես *Մարուխանյանը*: Ապստամբները շրջանում հռչակեցին սովետական իշխանություն: Ստեղծվեցին գավառային և շրջանային հեղափոխական կոմիտեներ: Մայիսի 17-ին ապստամբները գրավեցին նաև Նոր Բայազետը: Սակայն երկու օր անց տեղի դաշնակցականները, ստանալով լրացուցիչ օգնություն, ճնշեցին ապստամբությունը և հաշվեհարդար տեսան նրա ղեկավարների հետ: Մինչև 1981-ը տեղի է ունեցել շրջանային կուսակցական կազմակերպության 40 կոնֆերանս: 1981-ի հունվ. 1-ի դրությամբ շրջանում կար 106 սկզբնական կուսակցական կազմակերպություն՝ 2490 կոմունիստով: 1981-ին Մ. շ-ի 116 կոմերիտական կազմակերպությունում ընդգրկված էին 12900 կոմերիտական:

**Տնտեսությունը**: Նախասովետական շրջանում Մ. շ-ի տարածքի տնտեսությունն ուներ հետամնաց ագրարային բնույթ: Այժմ Մ. շ. գյուղատնտ., արդ. շրջան է: Տնտեսության համախառն արտադրանքի 38%-ը կազմում է գյուղատնտ., 62%-ը՝ արդ. արտադրանքը: 1980-ին շրջանում կար 17 սովետական տնտեսություն: Հողային ֆոնդը 118465 *հա* է, որից վարելահողեր՝ 19665 *հա*, խոտհարքներ՝ 9898 *հա*, արոտավայրեր՝ 40104 *հա*, պտղատու այգիներ՝ 440 *հա*, անտառներ՝ 3839 *հա*: Ոռոգելի հողատարածությունը 2028 *հա* է: Գործում են Ջոլաքարի և Աստղաձորի, կառուցվում՝ Մարտունու և Երանոսի ջրհան կայանները: Գյուղատնտեսության հիմնական ճյուղերն են կաթնաապրանքային անասնապահությունը, ծխախոտի ու կարտոֆիլի մշակումը, որոնք տալիս են գյուղատնտ. համախառն արտադրանքի 80,9%-ը: Շրջանի հանրային սեկտորում կա 18,7 հզ. գլուխ խոշոր, 72,8 հզ. գլուխ մանր եղջերավոր անասուն, 16,7 հզ. թռչուն: Զարգանում է պտղաբուծությունը, ձկնաբուծությունը: Լիճքում կա ձկնաբուծարան (տարեկան արտադրում է 107 մլն շերեփուկ), Մարտունիում՝ ձկնորսարան (տարեկան որսը՝ մոտ 450 *տ*): Արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ սննդի արդյունաբերության բաժինը կազմում է 43%, թեթև արդյունաբերությանը՝ 11%, էլեկտրատեխնիկական արդյունաբերությանը՝ 23%: Շրջանի 151 հիմնարկ-ձեռնարկություններում աշխատում են 12171 բանվոր-ծառայող, որից 4357-ը՝ արդ. ձեռնարկություններում: Արդ. առաջին ձեռնարկությունը՝ գորգ արտելը (այժմ՝ «Հայգորգ» արտադրական միավորման մասնաճյուղ՝ Մարտունիում), կառուցվել է 1933-ին: 1948-ին գործարկվել է Մաղինայի ՀԷԿ-ը: Մարտունիում, գործում են էլեկտրատեղակայման իրերի, պահածոների (խնձորի, չիչխանի), հացի գործարանները, գլխավորող պանրագործարանը, Հայկոոպի սննդի կոմբինատը: Լիճքում է հանքային ջրերի («Լիճք») գործարանը: Գործում են Չարենցավանի գործիքաշինական (Երանոսում) և այլ մասնաճյուղեր:



Պտղատու այգի Վարդենիկում



Ձկնաբուծական լճակ Լիճքում

Շրջանի տարածքով անցնում են Սևան—Եղեգնաձոր (Հայոց ձորի լեռնանցքով) միութենական և Մարտունի—Վարդենիս տեղական նշանակության մայրուղիները: Խճուղային ճանապարհների երկարությունը 214 *կմ* է, որից 13 *կմ*՝ կոշտ ծածկով: Կա 12 ավտոմատ հեռախոսակայան: Կապի բաժանմունքներ կան բոլոր բնակավայրերում:

**Առողջապահությունը**: Գործում են 2 հիվանդանոց (Մարտունիում, Վարդենիկում՝ 265 մահճակալով), 8 ամբուլատորիա, 3 առկայան, 3 դեղատուն (2-ը՝ Մարտունիում, 1-ը՝ Վարդենիկում), շտապ բժշկ. օգնության, սանիտարահակահամաճարակային և արյան փոխներարկման կայաններ, սանլուստուն: Բոլոր գյուղերում կա բուժմանկաբարձական կետ: Շըրջանում աշխատում են 80 բժիշկ, 300 միջին բուժաշխատող:

**Մշակույթը**: 1981/82 ուս. տարում Մ. շ-ում կային 23 միջնակարգ (5-ը երեկոյան) և 5 ութամյա (17935 աշակերտ, 1058 ուսուցիչ, որից 668-ը՝ բարձրագույն կրթությամբ), երաժշտական, նկարչական, սպորտ դպրոցներ, 10 մսուր-մանկապարտեզ, ինդուստրիալ տեխնոլոգիական տեխնիկում, պրոֆտեխնիկական ուսումնարան: Գործում են 9 կուլտուրայի տուն, 14 ակումբ, 32 գրադարան, 17 կինոսարք: Շրջանի բնակիչներն օգտվում են ռադիո- և հեռուստատեսային հաղորդումներից: Մ. շ-ում է ՀՍՍՀ ԳԱ երկրագործության

Մարտունու նկարչական դպրոցում



ԳՀԻ-ի Մարտունու փորձակայանը, բուսաբանական ինստ-ի Ծովինարի բարձրալեռնային անտառմելիորատիվ կայանը և տնկարանային տնտեսությունը: Բնական ռազից օգտվում են Մարտունին քտա-ն և Վաղաշեն գյուղը: 1965-ից լույս է տեսնում *«Թռիչք»* շրջանային թերթը:

Մարտունու շրջանի բնակավայրերը. Աստղաձոր, Արծվանիստ, Գեղհովիտ, Երանոս, Զոլաքար, Թազագյուղ, Լեռնակերտ, Լիճք, Ծակքար, Ծովինար, Ձորագյուղ, Մադինա, Մարտունի, Յանըղ, Ներքին Գետաշեն, Վաղաշեն, Վարդաձոր, Վարդենիկ, Վերին Գետաշեն:

*Տ. Գրիգորյան, Դ. Հովհաննիսյան*

Պատկերազարդումը տես 368—369-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակ V:

**ՄԱՐՑ**, գյուղ Հայկական ՍՍՀ Թումանյանի շրջանում, Մարց գետի (Դեբեդի վտակ) ափին, շրջկենտրոնից 16 *կմ* հարավ-արևելք: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի ութամյա դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կինո, մսուր-մանկապարտեզ, բուժմանկաբարձական կայան: Գյուղում և շրջակայքում պահպանվել են «Իգատակ», «Աղաքար դաշ», «Ղզաղաձոր», «Արփաթալա», «Մոտկար» գյուղատեղիները



Մարց

(XIII—XVII դդ.), Իգատակի վանքը (1255 թ.), մատուռներ (XIII—XIV դդ.), խաչքարձաններ (XIII դ.), գերեզմանոցներ խաչքարձաններով (XIII—XVII դդ.), դամբարաններ (I հազարամյակ):

**ՄԱՐՑԻԳԵՏ**, գտնվում է Հայկական ՍՍՀ Թումանյանի շրջանում, Դեբեդի աջ վտակը, երկարությունը 29 *կմ* է, ավազանը՝ 252 *կմ²*: Սկիզբ է առնում Գուգարաց լեռների Պաղակն լեռնազագաթի հվ. լանջից, մոտ 2000 *մ* բարձրությունից: Անտառապատ ձորով հոսում է դեպի հվ-արմ., ապա՝ հս-արմ.: Թումանյան քտա-ի մոտ թափվում է Դեբեդի մեջ: Սնումը խառն է՝ զարնանային հորդացումներով, ամառային վարարումներով: Դիտվում են թույլ ակտիվության ջրաքարային սելավներ: Տարեկան միջին ծախսը 2,46 *մ³/վրկ* է, հոսքը՝ 77,5 մլն *մ³*:

**ՄԱՐՑԻՆՈՎՍԿԻ** Եվգենի Իվանովիչ (1874—1934), սովետական վարակաբան, պարազիտաբան, համաճարակագետ: ՌՍՖՍՀ գիտ. վաստ. գործիչ (1934): 1899-ին ավարտել է Մոսկվայի համալսարանը: Եղել է Կենտրոնական բակտերիալոգիական ինստ-ի դիրեկտոր (1917—19): 1920-ին կազմակերպել և ղեկավարել է Տրոպիկական ինստ-ը (1934-ից Մ-ու անվ. պարազիտաբանության և տրոպիկական բժշկության ինստ.), միաժամանակ եղել է (1924—1930) Մոսկվայի II համալսարանի վարակիչ հիվանդությունների ամբիոնի վարիչ: Գիտական աշխատանքները հիմնականում վերաբերում են պարազիտաբանության, վարակիչ հիվանդությունների, համաճարակագիտության (հատկապես մալարիայի), առողջապահության կազմակերպման խնդիրներին:

**ՄԱՐՈՒԹԱ ԼԵՌ**, Մարաթուկ, Մարութկասար (թուրք. Մելեթո), զագաթ Սասնա լեռներում. բարձրությունը՝ 2967 *մ*: Կազմված է պալեոզոյի հասակի նստվածքներից: «Սասնա ծռեր» էպոսում հիշատակվում է որպես հայոց սրբազան լեռներից մեկը Ս. Աստվածածին վանքով՝ սասունցիների աղոթատեղին:

**ՄԱՐՈՒԹՅԱՆ** Լեմվել Մարտիրոսի (19.1.1904, Վան —10.2.1968, Երևան), հայ սովետական թարգմանիչ: 1925-ին ավարտել է Երևանի համալսարանի պատմագրական ֆակուլտետը: Բնագրից թարգմանել է Օ. դը Բալզակի հայերեն տասհատորյակի (1950—68) մեջ մտնող գործերի զգալի մասը՝ «Խորտակված պատրանքներ», «Տասներեքի պատմությունը», «Լքված տունը», «Երեսնամյա կինը», «Կուրտիզանուհիների պերճանքն ու թշվառությունը» և այլ գործեր:

**ՄԱՐՈՒԹՅԱՆ** Կոստանդին Հովհաննեսի [ծն. 29.11.1917, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)], հայ սովետական շինարար: ՀՍՍՀ վաստ. շինարար (1957): ՍՄԿԿ անդամ 1944-ից: Ավարտել է Երևանի պոլիտեխնիկական ինստ-ը (1941): Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին (1941—1945): 1954-ից եղել է Աթարբեկյանի ՀԷԿ-ի շինարարության պետ, 1959-ից՝ Հայկ. ՍՍՀ ժողտնտխորհի շինարարության վարչության պետ: 1961—65-ին՝ Հայկ. ՍՍՀ շինարարության մինիստր, 1966-ից՝ «Հայհիդրոէներգոշին» վարչության պետ, 1978-ից՝ Հայկ. ՍՍՀ շինարարական գործերի պետ. կոմիտեի (ՀՍՍՀ Պետշին) նախագահ: Ընտրվել է ՀՍՍՀ VI—X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: 1976-ից ՀԿԿ ԿԿ անդամ է: Պարգևատրվել է Լենինի 2, Հոկտեմբերյան հեղափոխության, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով:

**ՄԱՐՈՒԹՅԱՆ** Մանվել Մարտիրոսի (ծն. 1.1.1901, Վան), հայ դերասան, ռեժիսոր, դրամատուրգ: Թատերական կրթությունն ստացել է Վ. Միրզոյանի (Երևան) և Վիեննայի դրամատիկական ստուդիաներում: Բեմ է բարձրացել Երևանում, 1917-ին՝ Հ. Զարիֆյանի խմբում: 1921-ին անցել է Իրան, մասնակցել Մ. Թաշճյանի ներկայացումներին, ապա թատերական գործունեություն ծավալել Իրանում, Լիբանանում, Սիրիայում, Եգիպտոսում, Եվրոպայի և Լատինական Ամերիկայի բազմաթիվ երկրներում: Մ. խաղացել է շուրջ 150 դեր. լավագույններից են՝ Բաղխուդար, Էլիզբարով (Շիրվանզադեի «Նամուս», «Պատվի համար»), Պեպո, Ջիմզիմով (Սունդուկյանի «Պեպո»), Ուրիել Ակոստա (Գուցկովի «Ուրիել Ակոստա»), Օթելլո (Շեքսպիրի «Օթելլո»): Հեղինակ է տասից ավելի պիեսների («Կոմիտաս», «Դերասանի ցնորքը» ևն): Եղել է Թեհրանի «Հայ ակումբի» վարիչ, իրանահայ գրողների միության նախագահ: 1969-ին և 1971-ին Թեհրանում հրատարակվել են Մ-ի «Երբ իջնում է վարագույրը» հուշերի գրքի 1—2 հատորները:

*Բ. Հովակիմյան*

**ՄԱՐՈՒԹՅԱՆ** Տիրան Հարությունի [ծն. 24.11(7.12). 1911, գ. Ղշլաղ (այժմ՝ Կիրովական քաղաքի տարածքում)], հայ սովետական ճարտարապետ: ՀՍՍՀ վաստ. շինարար (1961): ՍՄԿԿ անդամ 1947-ից: Ավարտել է Երևանի պոլիտեխնիկական ինստ-ի ճարտ. բաժինը (1937): 1939-ից աշխատել է «Հայհիդրոնախագիծ» ինստ-ում (1952-ից՝ գլխավոր ճարտարապետ.): Հեղինակ է Սևանի (վերերկրյա մասի), Աթարբեկյանի, Գյումուշի, Արզնու, Երևանի, Տաթևի ու Բուի (Գանա, Աֆրիկա, վերջին երկուսը՝ Ռ. Ա. Ցագուբովի և Ս. Բ. Պետրոսյանի հետ), Շամբի, Սպանդարյանի, Ջարամագի I, II (Հյուսիս-Օսեթական ԻՍՍՀ), նաև գյուղական շուրջ 10 ՀԷԿ-երի համալիրների ճարտ. մասի: Մ-ի նախագծերով ստեղծվել են 250-ից ավելի կառույցներ, այդ թվում՝ մշակույթի տներ և ակումբներ, աղբյուր-հուշարձաններ, ուս. մանկական և առողջական հաստատություններ, բնակելի տներ (Երևանի Ազատության պողոտայի սկզբնամասը, Մոսկովյան և Դեմիրճյան փողոցներում), մեծ թվով գյուղական և ավանային բնակավայրեր՝ Լուսավան (այժմ՝ Չարենցավան), Լուսակերտ, Արզնի (այժմ՝ Առողջարան №1), Գազարին, Գառնի ևն:

*Երկ.* Ջրարբնոց և զվարթնոցատիպ տաճարներ, Ե., 1963: Ավանի տաճարը և համանման հուշարձաններ, Ե., 1976: Խորագույն Հայք, Ե., 1978:

**ՄԱՐՈՒԽԻ ԼԵՌՆԱՆՑՔ**, Մեծ Կովկասյան լեռնային համակարգի Գլխավոր լեռնաշղթայում, 2739 *մ* բարձրության վրա: Կապում է Մարուխ (Կուբանի ավազան) և Աչգարա գետերի հովիտները:

**ՄԱՐՈՒԿԻ**, ճապոնացի նկարիչ ամուսիններ: Իրի Մ. (ծն. 20.6.1901): 1922—33-

Ի. Մարուկի, Տ. Մարուկի. «Ատոմային ռումբ», հատված (1947—55, Հիրոսիմայի թանգարան, Հիրոսիմա)



ին սովորել է Տոկիոյում: 1945-ին ղեկավարել է Ճապոնիայի առաջադեմ նկարիչների միավորումը: Տ ո ս ի կ ո Մ., Տ ո ս ի կ ո Ա կ ա մ ա ց ու՝ կինը (ծն. 11.2. 1912), ամուսնու հետ ստեղծել է «Հիրոսիմա» հակամիլիտարիստական նկարաշարը (տուշ, ջրաներկ, սկիզբը՝ 1947)՝ աշխարհի առաջադիմական արվեստի նշանավոր ստեղծագործություններից մեկը:

**ՄԱՐՈՒՖ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Խնուս գավառում: 1909-ին ուներ 45 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՄԱՐՔԵ** (Marquet) Ալբեր (1875—1947), ֆրանսիացի նկարիչ: Ֆրանսիական կոմկուսի անդամ (1939—45-ի երկրորդ համաշխարհային պատերազմից հետո): 1895—1898-ին սովորել է Փարիզի գեղեցիկ արվեստների դպրոցում, Գ. Մորոյի մոտ:



Ա. Մ ա ր ք ե. «Հոնֆլյոր նավահանգիստը» (1911, Ա. Ս. Պուշկինի անվ. կերպարվեստի թանգարան, Մոսկվա)

1905—07-ին հարել է *ֆովիզմին*, ստեղծել կենսահաստատ, սակայն առավել զուսպ բնանկարներ («Հուլիսի 14-ին՝ Հավրում», մասնավոր հավաքածու, Փարիզ) և դիմանկարներ: 1907-ից հետո Մ-ի աշխատանքներին բնորոշ են լակոնիկ գծանկարը, հորինվածքի պարզ կառուցվածքը, մեղմ ու զորշավուն գունեռանգների նուրբ հարաբերումները («Սեն-Միշել կամուրջը Փարիզում», 1912, Ա. Ս. Պուշկինի անվ. կերպարվեստի թանգարան, Մոսկվա): Մ. ձգտել է բնության տևական ու հանգիստ վիճակների, լուսա-օդային միջավայրի վերարտադրմանը, լայնարձակ տարածականության ստեղծմանը:

*Գրկ.* Марке М., Альбер Марке, [пер. с франц.], М., 1969.

**ՄԱՐՔԻԶ**, մ ա ր կ ի զ (ֆրանս. marquis), 1. Կարոլինգների կայսրությունում *մարկայի* տեր, կառավարիչ: 2. Միջնադարյան Ֆրանսիայում և Իտալիայում (X դարից) խոշոր ֆեոդալ, որը հիերարխիայում զբաղեցրել է դուքսի և կոմսի միջև աստիճանը: 3. Մի շարք արևմտաեվրոպական երկրներում (Ֆրանսիա, Իտալիա, Իսպանիա) ժառանգական ազնվականական տիտղոս:

**ՄԱՐՔՍ**, Է վ ե լ ի ն գ (Marx, Aveling), Էլեոնորա (1855—1898), անգլիական և միջազգային բանվորական շարժման գործիչ: Կ. *Մարքսի* կրտսեր դուստրը: 1884-ից՝ անգլ. սոցիալիստ Է. Էվելինգի կինը: Սոցիալիստական լիգայի (1884) և Անկախ բանվորական կուսակցության (1893) հիմնադիրներից է: Գլխավորել է Լոնդոնի դոկերների (1889) և գազի ձեռնարկությունների բանվորների (1889) գործադուլները: Մասնակցել է II Ինտերնացիոնալի I կոնգրեսի նախապատրաստմանը, եղել է 1891 և 1893-ի կոնգրեսների պատվիրակ: Հրատարակության է պատրաստել Կ. Մարքսի մի շարք աշխատություններ:

*Գրկ.* Վ ո ր ո բ յ ո վ ա Օ. Բ., Ս ի ն ե լ ն ի կ ո վ ա Ի. Մ., Մարքսի դուստրերը, Ե., 1968:

**ՄԱՐՔՍ** (Marx) Ժեննի (ծննդյամբ՝ ֆ ո ն Վ ե ս տ ֆ ա լ ե ն, von Westphalen, 1814—1881), Կ. *Մարքսի* կինը, ընկերն ու օգնականը: Խզելով բոլոր կապերն ազնվականական միջավայրի հետ, որում ինքը մեծացել էր, 1843-ին ամուսնացել է Կ. Մարքսի հետ: Կատարելով Մարքսի քարտուղարուհու պարտականությունները՝ արտագրել և տպագրության է պատրաստել նրա ձեռագրերը: Նամակագրական կապերի մեջ է եղել միջազգային բանվորական շարժման մի շարք գործիչների հետ: Տոկունորեն տարել է բոլոր հալածանքները, նրա չորս զավակների մահվան պատճառը դարձած տարագիր կյանքի զրկանքները:

*Երկ.* Беглый очерк беспокойной жизни, в кн.: Воспоминания о Марксе и Энгельсе, М., 1956; (Письма), նույն տեղում, с. 240—54; (Письма), Маркс К. и Энгельс Ф., Соч., 2 изд., т. 27—34, Приложения.

**ՄԱՐՔՍ**, Լ ա ֆ ա ր գ (Marx, Lafargue), Լաուրա (1845—1911), ֆրանսիական սոցիալիստական և բանվորական շարժման գործիչ: Կ. *Մարքսի* դուստրը: 1868-ից իր ամուսնու՝ Պ. *Լաֆարգի* հետ ապրելով Փարիզում՝ նպաստել է Ֆրանսիայում I Ինտերնացիոնալի գաղափարների տարածմանը: Փարիզի կոմունայի (1871) անկումից հետո ամուսնու հետ տարագրվել է Իսպանիա, 1872-ին՝ Մեծ Բրիտանիա: 1880-ին վերադարձել է Ֆրանսիա: Ֆրանսերենի է թարգմանել Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հիմնական աշխատությունները: Մասնակցել է II Ինտերնացիոնալի I կոնգրեսի (1889) նախապատրաստմանը:

*Գրկ.* Վ ո ր ո բ յ ո վ ա Օ. Բ., Ս ի ն ե լ ն ի կ ո վ ա Ի. Մ., Մարքսի դուստրերը, Ե., 1968:

**ՄԱՐՔՍ**, Լ ո ն գ ե (Marx, Longuet), Ժեննի (1844—1883), միջազգային սոցիալիստական շարժման գործիչ: Կ. *Մարքսի* ավագ դուստրը: 1872-ից՝ Շ. Լոնգեի կինը: Կատարել է Կ. Մարքսի հանձնարարությունները, որոնք կապված էին նրա գիտական և I Ինտերնացիոնալի ղեկավարման աշխատանքների հետ: 1869—70-ին հրապարակել է հոդվածների մի ամբողջ շարք իռլանդ. հարցի կապակցությամբ, որոնցում պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերից պաշտպանել է իռլանդական հեղափոխականներին՝ ֆենիներին: Փարիզի կոմունայի (1871) անկումից հետո մեծ օգնություն է ցույց տվել տարագիր կոմունարներին: «Ժեննի Լոնգե, ծննդյամբ Մարքս» Մ-ին նվիրված մահախոսականում Ֆ. Էնգելսը գրել է. «Ի դեմս Ժեննիի պրոլետարիատը կորցրեց հերոսական մարտիկի» (Маркс К. и Энгельс Ф., Соч., 2 изд. т. 19, с. 347):

*Գրկ.* Վ ո ր ո բ յ ո վ ա Օ. Բ., Ս ի ն ե լ ն ի կ ո վ ա Ի. Մ., Մարքսի դուստրերը, Ե., 1968:

**ՄԱՐՔՍ** (Marx) Կարլ (5.5.1818, Տրիր, Գերմանիա —14.3.1883, Լոնդոն), *գիտական կոմունիզմի* հիմնադիրը, միջազգային պրոլետարիատի առաջնորդ և ուսուցիչ: «Միայն Մարքսի փիլիսոփայական մատերիալիզմը պրոլետարիատին ցույց տվեց ելքը հոգևոր ստրկությունից... Միայն Մարքսի տնտեսագիտական տեսությունը պարզաբանեց պրոլետարիատի իսկական դրությունը կապիտալիզմի ընդհանուր կառուցվածքում» (Լ ե ն ի ն Վ. Ի., Երկ. լիակտ. ժող., հ. 23, էջ 55):

Մ. ծնվել է Գերմանիայի տնտեսապես և քաղաքականապես առավել զարգացած մասում՝ Հռենոսի մարզում, փաստաբան Հենրիխ Մարքսի և Հենրիետա Պրեսբուրգի ընտանիքում, ուներ երեք եղբայր և հինգ քույր: 1830—35-ին նա սովորել է Տրիրի գիմնազիայում: Գիմնազիայի ավարտական շարադրությունում (Պատանու խոհերը՝ մասնագիտություն ընտրելիս) գրել է, որ պետք չէ պարփակվել նեղ եսասիրական շրջանակներում, այլ որոնել մարդկանց ծառայելու ուղիներ և միջոցներ: Եթե մարդն աշխատում է իր համար, նա, հավանաբար, կարող է դառնալ նշանավոր գիտնական, իմաստուն, բանաստեղծ, բայց երբեք չի կարող դառնալ կատարյալ և մեծ մարդ: 1835-ի հոկտեմբերին ընդունվել է Բոննի համալսարանը՝ իրավաբանություն ուսումնասիրելու համար: Սովորել է երկու սեմեստր և տեղափոխվել Բեռլինի համալսարան, ուր դասախոսություններ էին կարդում իրավագիտության ասպարեզի ժամանակի ականավոր մասնագետները: 1843-ին տեղի է ունենում Մ-ի և իր մանկության տարիների ընկերուհի Ժեննի ֆոն Վեստֆալենի ամուսնությունը: Ժեննին իր ամբողջ կյանքում մնաց Մ-ի հավատարիմ ընկերը և անձնուրաց օգնականը:

Իրավագիտությամբ, պատմությամբ, օտար լեզուներով զբաղվելու հետ մեկտեղ Մ. Բեռլինում հիմնովին ուսումնասիրել է փիլիսոփայություն, Հեգելի դիալեկտիկական մեթոդը: Հարել է երիտհեգելականներին, որոնք կատարում էին աթեիստական և քաղ. արմատական եզրակացություններ: 1841-ին «Դեմոկրիտի բնափիլիսոփայության և Էպիկուրի բնափիլիսոփայության տարբերությունը» թեմայով դիսերտացիայի համար Մ. ստացել է փիլիսոփայության դոկտորի աստիճան: Չնայած դիսերտացիայում Մ. դեռևս մնում էր իդեալիստ, հեգելական, բայց արդեն հանդես էր գալիս բացահայտ աթեիստական հայացքներով և հռչակում իրականության նկատմամբ փիլիսոփայության ակտիվ վերաբերմունքի սկզբունքը: Մ-ի վրա մեծ ազդեցություն են գործել Լ. *Ֆոյերբախի* երկերը («Քրիստոնեության էությունը», «Ապագայի փիլիսոփայության հիմնական դրույթները»), որոնք նպաստեցին նրա անցմանը մատերիալիզմին:

1842-ի մայիսից Մ. աշխատակցում է բուրժ. օպոզիցիոն շրջանների՝ Քյոլնում

լույս տեսնող «Հռենոսյան թերթ»-ին («Rheinische Zeitung»), հոկտեմբերին դառնում նրա խմբագիրներից մեկը: Շնորհիվ Մ-ի ղեկավարության թերթը դառնում է հեղափոխական-դեմոկրատական գաղափարների խոսափող: Այս շրջանից էլ սկսվում է Մ-ի անցումը իդեալիզմից մատերիալիզմին և հեղափոխական դեմոկրատիզմից կոմունիզմին: «Իրավունքի հեգելյան փիլիսոփայության քննադատության շուրջը» աշխատության մեջ (առաջին անգամ հրատարակվել է ՍՍՀՄ-ում, 1927-ին), քննադատության հիմնական սլաքն ուղղելով Հեգելի քաղ. հայացքների դեմ, Մ. հանգեց այն եզրակացության, որ ոչ թե պետությունն է որոշում քաղաքացիական հասարակությունը, այսինքն՝ նյութական շահերի ոլորտը, այլ ընդհակառակը, վերջինս է պայմանավորում քաղ. կարգի բնույթը: 1843-ի հոկտեմբերին Մ. տեղափոխվում է Փարիզ՝ հասարակական-քաղ. հանդես հրատարակելու նպատակով: 1844-ի փետրվարին լույս է տեսնում «Գերմանա-ֆրանսիական տարեգիրք»-ը («Deutsch-Französische Jahrbücher»), որտեղ տպագրվում են Մ-ի «Հրեական հարցի շուրջը» և «Իրավունքի հեգելյան փիլիսոփայության քննադատության շուրջը: Ներածություն» հոդվածները, որոնք նշանավորում են Մ-ի վերջնական անցումը մատերիալիզմին և կոմունիզմին:

1842-ի նոյեմբերին Քյոլնում տեղի է ունենում Մ-ի և Ֆ. *Էնգելսի* առաջին հանդիպումը՝ անձնական ծանոթությունը (ավելի վաղ ունեցել են նամակագրական կապեր), իսկ 1844-ի սեպտեմբերին, հանդիպելով Փարիզում, Մ. և Էնգելսը հիմք են դնում իրենց մեծ բարեկամությանը և համատեղ աշխատանքին: Էնգելսի հետ նրանք գրում են «Սուրբ ընտանիք կամ Քննադատական քննադատության քննադատություն ընդդեմ Բրունո Բաուերի և ընկերության» գիրքը (լույս է տեսել Մայնի Ֆրանկֆուրտում, 1845-ի փետրվարին), որը պարունակում է «...Մարքսի գրեթե արդեն կազմավորված հայացքը պրոլետարիատի հեղափոխական դերի մասին» (Լ ե ն ի ն Վ. Ի., Երկ., հ. 38, էջ 9):

1845-ի փետրվարին ֆրանս. իշխանությունների կողմից (Պրուսիայի ճնշմամբ) արտաքսվելով Փարիզից, Մ. տեղափոխվեց Բրյուսել, ուր մնաց ավելի քան երեք տարի: Նույն տարում ավարտեց «Թեզիսներ Ֆոյերբախի մասին» աշխատությունը, որի կենտրոնական գաղափարը հասարակության կյանքում և ճանաչողության մեջ նյութական հեղափոխական պրակտիկայի վճռական դերի հարցն էր: Նոր աշխարհայացքի հեղափոխական բնույթը Մ. ձևակերպում է եզրափակիչ թեզիսում. «Փիլիսոփաները միայն տարբեր կերպով բացատրել են աշխարհը, բայց խնդիրն այն փոխելն է» (Մ ա ր ք ս Կ., Է ն գ ե լ ս Ֆ., Ընտ. երկ., հ. 1, էջ 4): 1846-ի ապրիլին Էնգելսի հետ նրանք ավարտում են «Գերմանական գաղափարախոսություն» աշխատությունը (առաջին անգամ ամբողջովին հրատարակվեց ՍՍՀՄ-ում, 1932-ին), որի մեջ Մ. ու Էնգելսը դիալեկտիկա-մատերիալիստական կոնցեպցիայի հիման վրա զարգացրին պրոլետարական հեղափոխության հաղթանակի անհրաժեշտության և կոմունիստական հասարակության հաստատման ձևավորման տեսությունը: 1846-ի սկզբին Մ. ու Էնգելսը ստեղծում են Բրյուսելի կոմունիստական թղթակցային կոմիտեն, որը կապեր է պահպանում Անգլիայի, Ֆրանսիայի, Գերմանիայի թղթակցային կոմիտեների ու խմբերի հետ, ընդգծում իր համերաշխությունը չարտիստական կուսակցության («Արդարների միություն») մեջ միավորված անգլ. բանվորների պայքարին: Պրոլետարական առաջավոր ուժերի համախմբման համար Մ. վճռականորեն հանդես էր գալիս մանրբուրժուական, սոցիալիստական և հակասոցիալիստական ուսմունքների դեմ: 1847-ի հուլիսին լույս է տեսնում Մ-ի «*Փիլիսոփայության աղքատություն*: Պ ա տ ա ս խ ա ն պ ա ր ո ն Պ ր ու դ ո ն ի «Ա ղ ք ա տ ու թ յ ա ն փ ի լ ի ս ո փ ա յ ու թ յ ու ն ը»» աշխատությունը, որտեղ գիտականորեն շարադրված են պատմության մատերիալիստական ըմբռնման հիմնական սկզբունքները:

1847-ի սկզբին «Արդարների միության» ղեկավարների հրավերով Մ. և Էնգելսը Լոնդոնում մասնակցում են նրա վերակառուցմանը, դառնալով նորաստեղծ *Կոմունիստների միության* անդամներ և նրա հանձնարարությամբ գրում «*Կոմունիստական կուսակցության մանիֆեստը*» (լույս է տեսել 1848-ի փետրվարին): Մարքսիզմի այս առաջին ծրագրային փաստաթղթում «...հանճարեղ պարզությամբ ու ցայտունությամբ ուրվագծված է նոր աշխարհայեցողությունը նաև սոցիալական կյանքի բնագավառն ընդգրկող հետևողական մատերիալիզմը, դիալեկտիկան, որպես առավել բազմակողմանի ու խոր ուսմունք զարգացման մասին, նոր, կոմունիստական հասարակություն ստեղծող պրոլետարիատի դասակարգային պայքարի և համաշխարհային-պատմական հեղափոխական դերի տեսությունը» (Լ ե ն ի ն Վ. Ի., Երկ. լիակտ. ժող., հ. 26, էջ 54—55): Մանիֆեստն ավարտվում էր «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» ինտերնացիոնալիստական կոչով:

1848-ի մարտին Մ. արտաքսվում է Բելգիայից: Փարիզում նա ստեղծում է Կոմունիստների միության նոր Կենտկոմ, որի նախագահ է ընտրվում ինքը: Ապրիլին Էնգելսի հետ միասին մեկնում է Գերմանիա՝ այնտեղ սկսված հեղափոխությանը մասնակցելու համար: Նույն թվականի հունիսից մինչև 1849-ի մայիսը Քյոլնում Մ-ի խմբագրությամբ լույս է տեսնում «*Նոր հռենոսյան լրագիր*»-ը («Neue Rheinische Zeitung»): Մ. անցնում է Հարավ-Արևմտյան Գերմանիա, որտեղ ապստամբություն էր ծավալվել: Մ. հաստատակամորեն կիրառում է դեռևս հեղափոխության սկզբից վերցրած գերմ. պրոլետարիատի մասսայական և քաղ. կազմակերպություն (որի կորիզը պետք է դառնային կոմունիստները) ստեղծելու գիծը: Հունիսին գալով Փարիզ՝ Մ. կապ է հաստատում դեմոկրատական ու սոցիալիստական շարժումների, բանվորական գաղտնի կազմակերպությունների հետ: Հետապնդվելով ֆրանս. իշխանությունների կողմից՝ Մ. 1849-ի օգոստոսին անցնում է Լոնդոն: Մ-ի և Էնգելսի անմիջական մասնակցությունը 1848—49-ի հեղափոխական պայքարին Լենինը համարել է նրանց գործունեության «...կենտրոնական կետ»-ը (Լ ե ն ի ն Վ. Ի., Երկ. լիակտ. ժող., հ. 16, էջ 29): Հեղափոխության տարիները ոչ միայն ապացուցեցին մարքսիզմի կենսական ուժը, նրա գերազանցությունը մյուս բոլոր սոցիալիստական տեսությունների նկատմամբ, այլև հանդիսացան նրա զարգացման ու հարստացման կարևոր աղբյուրը: Իր հետագա գործունեության ընթացքում Մ. մշտապես անդրադառնում է այդ հեղափոխության դասերին:

Լոնդոն ժամանելուց անմիջապես հետո Մ. Էնգելսի հետ վերստեղծում է Կոմունիստների միության ղեկավար մարմինը (ԿԿ), գրում հոդվածներ, որոնք Էնգելսը հետագայում հրատարակում է «Դասակարգային պայքարը Ֆրանսիայում 1848-ից մինչև 1850 թվականը» խորագրով: Մ. հիմնավորում է պրոլետարական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի տեսությունը՝ ապացուցելով բանվոր դասակարգի կողմից քաղ. իշխանությունը նվաճելու անհրաժեշտությունը, առաջին անգամ գործածում է «պրոլետարիատի դիկտատուրա» տերմինը և բացահայտում դրա քաղ., տնտ. ու գաղափարական խնդիրները, ձևակերպում գյուղացիության հետ բանվոր դասակարգի դաշինքի գաղափարը, այդ դաշինքում բանվոր դասակարգի ղեկավար դերի անհրաժեշտությունը: Ելնելով 1848—49-ի կարևոր իրադարձություններից, 1850-ի մարտին Մ. ու Էնգելսը գրում են «Կենտրոնական կոմիտեի դիմումը Կոմունիստների միությանը» (բազմացվել է թռուցիկի ձևով), որի մեջ նրանք ընդգծում են պրոլետարիատի ինքնուրույն կուսակցություն ստեղծելու, մանրբուրժ. դեմոկրատներից առանձնանալու անհրաժեշտությունը, ձևակերպում անընդհատ հեղափոխության մասին գաղափարը, որը պետք է հանգեցներ նոր հասարակարգի հիմնադրմանը: Պրոլետարական հեղափոխության մասին տեսությունը Մ. զարգացնում է «*Լուի Բոնապարտի Բրյումերի տասնութը*» աշխատության մեջ, որը լույս է տեսել 1852-ին: Մ-ի այն հետևությունը, որ բոլոր մինչ այդ տեղի ունեցած հեղաշրջումները կատարելագործել են բուրժ. պետ. մեքենան՝ փոխանակ այն ջախջախելու, ըստ Լենինի «...գլխավորը, հիմնականն է պետության մասին մարքսիզմի ուսմունքի մեջ» (Լ ե ն ի ն Վ. Ի., Երկ., հ. 25, էջ 524):

Հեղափոխությունից հետո, ուժեղացող ռեակցիայի պայմաններում, Մ. և Էնգելսը հանգում են այն եզրակացության, որ Կոմունիստների միությունը սպառել է իր հնարավորությունները, և նպատակահարմար չէ նրա գործունեության շարունակումը նախկին ձևով: 1852-ի նոյեմբ. 17-ին Կոմունիստների միության Լոնդոնի շրջանի ժողովում Մ-ի նախաձեռնությամբ որոշվում է արձակել Միությունը: Հենվելով պրոլետարիատի առաջին միջազգային կոմունիստական կազմակերպության հարուստ փորձի վրա՝ Մ. որոնում է կուսակցության համար մղվող պայքարի նոր ձևեր:

1850-ական թթ. Եվրոպայում ռեակցիայի իշխող ժամանակաշրջանում առանձնապես դժվարանում են Մ-ի ու նրա ընտանիքի կյանքի պայմանները, և միայն Էնգելսի մշտական օգնությունն է փրկում Մ-ի ընտանիքին աղքատության ճիրաններից: Չնայած ծայրահեղ զրկանքներին՝ Մ. աշխատում էր հսկայական եռանդով և ուժերի լարումով: Մշակելով նոր փիլիսոփայության (*դիալեկտիկական մատերիալիզմ* և *պատմական մատերիալիզմ*) տեսությունը՝ Մ. գլխավոր ուշադրությունը նվիրում է քաղաքատնտեսության ուսումնասիրությանը (տես *Մարքսի տնտեսագիտական ուսմունքը*):

1859-ի հունիսին Բեռլինում լույս է տեսնում Մ-ի «Քաղաքատնտեսության քննադատության շուրջը» գրքի առաջին պրակը, որը կարևոր ուղենիշ էր մարքսիստական քաղաքատնտեսության ստեղծման գործում և կազմում է «*Կապիտալի*» նախահիմքը:

1850-ական թթ. վերջի և 60-ական թթ. սկզբի հեղափոխական նոր վերելքը ստիպեց Մ-ին ավելի շատ զբաղվելու պրոլետարական կուսակցության ստեղծման գործնական հարցերով: Պրոլետարական հեղափոխականներին բուրժ. գաղափարախոսների զրպարտանքից պաշտպանելու նպատակով Մ. 1860-ի դեկտեմբերին հրատարակում է իր «Պարոն Ֆոգտ» պամֆլետը, որն ուղղված էր գռեհիկ դեմոկրատ ու բոնապարտիստ Կարլ Ֆոգտի դեմ:

1864-ի սեպտ. 28-ին Լոնդոնում Մ-ի ղեկավարությամբ հիմնադրվում է «Բանվորների միջազգային ընկերությունը»՝ Առաջին Ինտերնացիոնալը (տես *Ինտերնացիոնալ I*): «Բանվորների միջազգային ընկերության հիմնադիր մանիֆեստում» և «Ընկերության ժամանակավոր կանոնադրությունում» Մ. մատչելի ձևով շարադրեց Ինտերնացիոնալի հետագա ողջ գործունեության՝ պրոլետարիատի շարժման դասակարգային ինքնուրույնության սկզբունքը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարները: Մ. վճռական պայքար է մղում ուտոպիական, ռեֆորմիստական և աղանդավորական հայացքների դեմ (անգլ. լիբերալ տրեդ-յունիոնականներ, լասալականներ, պրուդոնիստներ, բակունինականներ ևն): Ինտերնացիոնալի Գլխավոր խորհուրդը Մ-ի ղեկավարությամբ լայն գործունեություն է ծավալում ի պաշտպանություն 1871-ի Փարիզի կոմունայի: Մ. կապ է պահպանում կոմունարների հետ, իր խորհուրդներով ու ցուցումներով օգնում նրանց: 1871-ի մայիսի 30-ին I Ինտերնացիոնալի Գլխավոր խորհուրդն ընդունում է Մ-ի գրած «Քաղաքացիական պատերազմը Ֆրանսիայում» կոչը, որտեղ ցույց է տրըվում Փարիզի կոմունայի, որպես նոր՝ պրոլետարական պետություն ստեղծելու առաջին փորձի, նշանակությունը:

Առաջին Ինտերնացիոնալում կատարած հսկայական աշխատանքի հետ մեկտեղ Մ. իրեն հատուկ եռանդով շարունակում է գործունեությունը նաև տեսության ասպարեզում: 1867-ի սեպտ. 14-ին Համբուրգում լույս է տեսնում «Կապիտալ»-ի առաջին հատորը՝ գիտական կոմունիզմի գըլխավոր երկը («Կապիտալ»-ի II և III հատորները տպագրության է պատրաստել Էնգելսը և հրատարակել Մ-ի մահից հետո): «Կապիտալ»-ում շարադրված են Մ-ի տնտեսագիտական և սոցիալիստական հայացքների հիմունքները, ինչպես նաև գոյություն ունեցող հասարակության, արտադրության կապիտալիստական եղանակի և դրա հետևանքների նրա քննադատության հիմունքները: «Կապիտալ»-ը տնտեսագիտական հանճարեղ աշխատություն լինելով հանդերձ, անգնահատելի ավանդ է մարքսիզմի մյուս բաղկացուցիչ մասերի՝ մարքսիստական փիլիսոփայության և գիտական կոմունիզմի զարգացման գործում:

Կ. Մարքսի նամակը Ֆ. Էնգելսին, «Կապիտալ»-ի առաջին հատորի ավարտման կապակցությամբ, 16 օգոստոսի 1867

Առաջին Ինտերնացիոնալի գործունեության դադարումից հետո էլ (1873-ին, պաշտոնապես լուծարքի է ենթարկվել 1876-ին) Մ. մնում է բոլոր երկրների սոցիալիստների գաղափարական առաջնորդն ու ուսուցիչը, Էնգելսի հետ միասին առաջատար դեր խաղում բանվորական շարժման մեջ: Մ-ի ղեկավարությամբ աճում է պրոլետարական հեղափոխականների մի ամբողջ սերունդ (Ա. Բեբել, Վ. Լիբկնեխտ, Ի. Բեկկեր, Է. Վայյեն, Վ. Վոլֆ, Ֆ. Զորգե, Պ. Լաֆարգ և ուրիշներ): 1875-ի մայիսին Մ. գրում է «*Գոթայի ծրագրի քննադատություն*» աշխատությունը, որտեղ տալիս է լասալականության, որպես մանրբուրժ. օպորտունիստական հոսանքի, սպառիչ բնութագիրը, վերլուծում կոմունիզմի զարգացման ու պետության մահացման փոխկապակցությունը: Գրքում Մ. հիմնական գծերով բացահայտում է ապագա կոմունիստական հասարակության երկու փուլերի տարբերիչ առանձնահատկությունները: 1879-ի սեպտեմբերին Մ. և Էնգելսը Ա. Բեբելին, Վ. Լիբկնեխտին և Գերմանիայի ս-դ. կուսակցության մյուս գործիչներին ուղարկում են շրջաբերական նամակ, որտեղ մերկացնում են Է. Բեռնշտայնի և մյուսների օպորտունիզմը, քննադատում նրանց նկատմամբ կուսակցության ղեկավարության բռնած հաշտվողական դիրքը: Մինչև իր կյանքի վերջը Մ. շարունակում է զարգացնել բանվորական շարժման տեսությունն ու տակտիկան, վճռական պայքար մղել պրոլետարական կուսակցության ստեղծման ու ամրապնդման համար:

1880-ական թթ. սկզբին Մ-ի առողջությունը խիստ վատանում է: 1881-ի դեկտ. 2-ին մահանում է Ժեննի Մարքսը: 1882-ին բուժվելու նպատակով Մ. լինում է Ալժիրում, Ֆրանսիայում, Շվեյցարիայում: 1883-ի մարտի 14-ին Մ. վախճանվում է, թաղումը տեղի է ունենում մարտի 17-ին, Լոնդոնի Հայգեյթի գերեզմանատանը: Շիրիմի մոտ արտասանած դամբանական ճառը Էնգելսն ավարտում է հետևյալ խոսքերով. «Ե՛վ նրա անունը, և՛ նրա գործը կապրեն դարեր» (Մարքս Կ. և Էնգելս Ֆ., Ընտ. երկ., հ. 3, էջ 209): Մ-ի անվան հետ է կապված և նրա անունով է կոչվում ամենաառաջավոր, իսկական գիտական աշխարհայացքը, որը մարդկությանը և ամենահեղափոխական դասակարգին՝ պրոլետարիատին տվել է աշխարհը ճանաչելու և վերափոխելու ամենահաղթ զենք:

Մ. մեծ հետաքրքրություն էր ցուցաբերում և ուշադրությամբ հետևում էր Ռուսաստանում հեղափոխական շարժումների զարգացմանը, ռուս հեղափոխականների խորհրդատուն ու բարեկամն էր: Մ. ռուսերեն ուսումնասիրում էր 1861-ի ռեֆորմից հետո Ռուսաստանում լույս տեսնող վիճակագրական հետազոտություններն ու հրատարակությունները: Սիստեմավորելով ու ամփոփելով այդ նյութերը՝ 1881—82-ին Մ. կազմում է «Նոթեր 1861-ի ռեֆորմի և Ռուսաստանի ետռեֆորմյան զարգացման մասին» ձեռագիրը, որում ռեֆորմի նախապատրաստումը ուղղակի կախման մեջ է դնում գյուղացիների ուժեղացող դժգոհությունից, գյուղացիական շարժման աճից: Ռեֆորմը Մ. բնութագրում է որպես «գյուղացիների կողոպուտ, որն առաջ բերեց ժողովրդական զայրույթի և հակակալվածատիրական պայքարի նոր պոռթկում» (Маркс К. и Энгельс Ф., Соч., т. 19, с. 422): Ռեֆորմը և նրա արդյունքները Մ. դիտում էր որպես Ռուսաստանում կապիտալիստական ֆորմացիայի հաստատման սկիզբ:

Ուսումնասիրելով Չեռնիշևսկու երկերը՝ Մ. նրան անվանում է «...ռուս մեծ գիտնական և քննադատ...» (Մարքս Կ. և Էնգելս Ֆ., Ընտ. երկ., հ. 2, էջ 120): Հանձինս Չեռնիշևսկու և Դոբրոլյուբովի Մ. տեսնում էր Ռուսաստանում հեղափոխական նոր սերնդի դաստիարակների ու ղեկավարների: «...Մարքսն ու Էնգելսը լի էին ամենավարդագույն հավատով դեպի ռուսական հեղափոխությունն ու նրա հզոր համաշխարհային նշանակությունը» (Լենին Վ. Ի., Երկ. լիակտ. ժող., հ. 15, էջ 305): Ռուսաստանում հեղափոխության բախտը Մ. կապում էր արևմտաեվրոպական պրոլետարիատի հետ: 1881-ի մարտին, ի պատիվ Փարիզի կոմունայի 10-րդ տարեդարձի, Լոնդոնում տեղի ունեցած սլավոնական միտինգին հղած ուղերձում Մ. և Էնգելսը վստահություն էին հայտնում, որ Ռուսաստանում զարգացող հեղափոխական շարժումը «...վերջ ի վերջո պետք է անխուսափելիորեն հասցնի, գուցե երկարատև և դաժան պայքարից հետո, ռուսական կոմունայի ստեղծմանը» (Маркс К. и Энгельс Ф., Соч., т. 19, с. 252): Գալիք հեղափոխական շարժումը, նրանց կարծիքով, շրջադարձային կետ կհանդիսանա համաշխարհային պատմության մեջ: Մ. սերտ բարեկամական կապերի մեջ էր ռուս առաջավոր քաղ. գործիչների հետ, որոնք Մ-ին իրենց ուսուցիչն էին համարում, թարգմանում և պրոպագանդում էին նրա գործերը: Մ. բարձր

գնահատական տվեց «Կապիտալ»-ի առաջին հատորի ռուսերեն թարգմանությանը (լույս է տեսել 1872-ին), որը գերմաներենից հետո երկրորդն էր: «Կոմունիստական կուսակցության մանիֆեստ»-ի 1882-ի ռուսերեն երկրորդ հրատարակության համար գրած առաջաբանում Մ. ու Էնգելսը նշել են, որ «...Ռուսաստանը ներկայացնում է հեղափոխական շարժման առաջավոր ջոկատը Եվրոպայում» (Մ ա ր ք ս Կ. և Է ն գ ե լ ս Ֆ., Ընտ. երկ., հ. 1, էջ 126):

Մ-ի մահից հետո նրա մեծ զինակից Էնգելսը շարունակեց մարքսիստական ուսմունքի զարգացումը՝ կատարելով բոլոր երկրների սոցիալիստների խորհրդատուի և ղեկավարի դերը: Մ-ի և Էնգելսի գործի արժանավոր ժառանգորդն ու շարունակողը իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանում դարձավ Վ. Ի. *Լենինը*: Լենինիզմը XX դ. մարքսիզմն է: *Մարքսիզմ-լենինիզմը* բանվոր դասակարգի, ողջ առաջավոր մարդկության ուղեցույցն ու գաղափարական զենքն է: «Մարքսիզմ-լենինիզմը միակ հուսալի հիմքն է ճիշտ ստրատեգիա և տակտիկա մշակելու համար» (Բ ր ե ժ ն և Լ. Ի., ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, Ե., 1976, էջ 107): Լենինյան կուսակցությունը ծագել է մարքսիզմի հաստատուն բազայի վրա, որպես օրինական ժառանգորդ այն ամեն լավի, ինչ կար միջազգային բանվորական և Ռուսաստանի հեղափոխական-դեմոկրատական շարժման մեջ: Բանվոր դասակարգի մարքսիստական-լենինյան կուսակցության քաղաքականությունն ու տակտիկան հաստատվեց և հսկայական չափով հարստացավ ռուս. երեք հեղափոխությունների հարուստ փորձով: Մարքսիզմ-լենինիզմի ճշմարտության գործուն ուժի նորանոր ապացույցներ բերեց Մեծ հոկտեմբերով սկսված կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու նոր դարաշրջանը: Մ-ի ուսմունքը հավերժ կենդանի ու զարգացող է, «...ամենազոր է, որովհետև այն ճշմարիտ է» (Լ ե ն ի ն Վ. Ի., Երկ. լիակտ. ժող., հ. 23, էջ 49):

Մ-ի գրական ժառանգության գիտական ամենալայն ուսումնասիրությունն ու հրատարակությունը կենտրոնացված է ՍՄԿԿ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի ինստ-ում (տես *Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտ ՍՄԿԿ ԿԿ-ին կից*), ինչպես նաև ԳՍՄԿ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի ինստ-ում, որոնք այժմ իրականացնում են Մ-ի և Էնգելսի երկերի հրատարակությունը բնագրի լեզվով՝ 100 հատորով: Մ-ի և Էնգելսի երկերը մինչև այժմ հրատարակվել են աշխարհի ավելի քան 100 լեզուներով:

Որպես իսկական պրոլետարական ինտերնացիոնալիստ՝ Մ. գտնում էր, որ ոչ մի ազգ չի կարող ազատ լինել, միևնույն ժամանակ ճնշելով ուրիշ ազգերի: 1880-ին ծանոթանալով «Նարոդնայա վոլյա» կազմակերպության ծրագրին՝ Մ. հավանություն է տալիս նրա հեղափոխական դեմոկրատական պահանջներին և հատկապես Ռուսական կայսրության մեջ մտնող ազգերի ինքնորոշման վերաբերյալ կետին:

Մ-ի մի շարք աշխատություններում հիշատակվում են հայերը, նրանց դերը ընդհանուր քաղաքակրթության զարգացման մեջ, Հայաստանը, բնութագրվում նրա սոցիալ-տնտ. և ռազմա-ստրատեգիական նշանակությունը: Մերկացնելով մեծ տերությունների նվաճողական քաղաքականությունը Հայաստանի նկատմամբ, Օսմանյան կայսրության մեջ իշխող ֆեոդ., բարբարոսական կարգերը՝ Մ. 1854-ի մարտին նշել է, որ «Օսմանյան կայսրության սահմաններում ապրում են 2.400 հզ. լուսավորչական և 900 հզ. կաթոլիկ հայեր» (Маркс К. и Энгельс Ф., Соч., 2 изд., т. 10, с. 171): Հայերի և մյուս քրիստոնյա ժողովուրդների ազատագրության հարցը Մ. և Էնգելսը համարում էին թուրք. պրոբլեմի մի մասը, որի, ինչպես և այլ մեծ պրոբլեմների, լուծումը կապում էին համաեվրոպական հեղափոխության հետ:

1870-ական թթ. մարքսիզմն սկսում է թափանցել հայ իրականություն: Հայ մամուլում Մ. մեծարվում է իբրև Ինտերնացիոնալի «հիմնադիր և գլխավոր», իսկ 80-ական թթ. Մ-ի աշխատությունների հայերեն թարգմանության առաջին փորձերն են արվում: Մ-ի և Էնգելսի «Կոմունիստական կուսակցության մանիֆեստ»-ի առաջին առանձին հրատարակությունը իրականացվել է 1904-ին, Ժնևում՝ Ս. Շահումյանի և Մ. Մանուչարյանի թարգմանությամբ: Նույն թվին լույս է տեսել Մ-ի «Վարձու աշխատանք և կապիտալ»-ը: Մ-ի և Էնգելսի աշխատությունները հայերեն տպագրվել են Աթենքում, Նյու Յորքում, Բաքվում, Թիֆլիսում, Ժնևում, Մոսկվայում, Վիեննայում: Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո դրանց հրատարակության հիմնական վայրը Երևանն է: 1894—1980-ին Մ-ի և Էնգելսի ընտիր երկերը, թեմատիկ ժողովածուները և առանձին աշխատությունները (131 անուն) հայերեն հրատարակվել են 852,7 հզ. տպաքանակով: Այդ թարգմանությունները բնագրից կատարել են Հ. Աթաբեկյանցը, Ս. Շահումյանը, Ս. Կասյանը, Ա. Հովհաննիսյանը, Թ. Ավդալբեգյանը, Պ. Մակինցյանը, Մ. Մանուչարյանը, Գ. Ջաղեթյանը, Ե. Տեր-Մինասյանը և ուրիշներ:


ԿԱՐԼ ՄԱՐՔՍ

ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐ

«Կապիտալ»-ի հայերեն առաջին հրատարակության տիտղոսաթերթը

Պատկերազարդումը տես 368—369-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակներ VI—VII:

*Երկ.* Մ ա ր ք ս Կ. և Է ն գ ե լ ս Ֆ., Համառոտ ընտիր նամակներ, հ. 1, Ե., 1936: Մ ա ր ք ս Կ., Է ն գ ե լ ս Ֆ., Ընտ. երկ., հ. 1—2, Ե., 1950: Մ ա ր ք ս Կ. և Է ն գ ե լ ս Ֆ., Ընտ. երկ., հ. 1—3, Ե., 1972—78: Կապիտալ, հ. 1—3, Ե., 1933—49: Մ ա ր ք ս Կ. և Է ն գ ե լ ս Ֆ., Կոմունիստական կուսակցության մանիֆեստը, Ե., 1973: Փիլիսոփայության աղքատությունը, Ե., 1948: Քաղաքատնտեսության քննադատության շուրջը, Ե., 1948: Մ ա ր ք ս Կ. և Է ն գ ե լ ս Ֆ., Անգլիայի մասին, Ե., 1953: Քաղաքացիական պատերազմը Ֆրանսիայում, Ե., 1954: Գոթայի ծրագրի քննադատությունը, Ե., 1955: Մարքսի և Էնգելսի նամակագրությունը ռուս քաղաքական գործիչների հետ, Ե., 1954: Մ ա ր ք ս Կ., Է ն գ ե լ ս Ֆ., Նամակներ «Կապիտալ»-ի մասին, Ե., 1954: Մ ա ր ք ս Կ. և Է ն գ ե լ ս Ֆ., Արվեստի մասին, հ. 1—2, Ե., 1963—64: Մ ա ր ք ս Կ., Է ն գ ե լ ս Ֆ. և Լ ե ն ի ն Վ. Ի., Գիտական կոմունիզմի մասին, Ե., 1965: М а р к с К. и Э н г е л ь с Ф., Соч., 2 изд., т. 1—49, М., 1955—79; М а р к с К., Э н г е л ь с Ф., Избр. произв., т. 1—3, М., 1979; М а р к с К. и Э н г е л ь с Ф., Из ранних произведений, М., 1956; Архив Маркса и Энгельса, т. 1—9, 11—15, М., 1933—73;

*Գրկ.* Է ն գ ե լ ս Ֆ., Կարլ Մարքս, Մարքս Կ. և Էնգելս Ֆ., Ընտ. երկ., հ. 3, Ե., 1978: Լ ե ն ի ն Վ. Ի., Մարքսի և մարքսիզմի մասին, Մ., 1924: Ն ո ւ յ ն ի, Մարքս—Էնգելս—մարքսիզմ, Ե., 1950: Ն ո ւ յ ն ի, Կարլ Մարքս, Ե., 1968: Կարլ Մարքս. կենսագրություն, Ե., 1972: Տ ե ր-Ս ի մ ո ն յ ա ն Դ., Կարլ Մարքս, Ե., 1933: Ք ա ր ա մ յ ա ն Հ. Գ., Կարլ Մարքսը և իր երեխաները, Ե., 1959: Մ ե ր ի ն գ Ֆ., Մարքս Կարլ: Նրա կյանքի պատմությունը, Ե., 1961: Բ ա շ ի ն ջ ա ղ յ ա ն Ջ., Կարլ Մարքս, Ե., 1968: Ֆ ր ա ն գ ու լ յ ա ն Ս. Ե., Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը ճնշված ժողովուրդների ազատագրական պայքարի մասին, Ե., 1975: Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի աշխատությունների հայերեն հրատարակությունների մատենագիտություն (1894—1973), Ե., 1977: К. Маркс, Ф. Энгельс и революционная Россия, М., 1967; Основоположник научного коммунизма. Тезисы к 150-летию со дня рождения К. Маркса, М., 1968; Воспоминания о Марксе и Энгельсе, М., 1956; К. Маркс. Даты жизни и деятельности, М., 1934; Л е в и н Л. А., Библиография библиографий произведений К. Маркса, Ф. Энгельса, В. И. Ленина, М., 1961; К о н ю ш а я Р. П., Карл Маркс и революционная Россия, М., 1975; Русские книги в библиотеках К. Маркса и Ф. Энгельса, М., 1979.

*Գ. Ղարիբջանյան*

**ՄԱՐՔՍԻ ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՄՈՒՆՔ**, մարքսիզմի երեք բաղկացուցիչ մասերից գլխավորը, որը բացահայտում է «...արդի հասարակության շարժման էկոնոմիկական օրենքը...» («Կապիտալ», հ. 1, էջ 8): Մարքսը առաջինը ցույց տվեց, որ *տնտեսական կատեգորիաները* մարդկանց արտադրական հարաբերությունների արտահայտության ձևեր են, այլ ոչ թե իրերի կամ մարդկանց ու իրերի հարաբերություններ, ինչպես ընդունված է բուրժ. տնտեսագիտության մեջ: Նրա այս մեծագույն հայտնագործությունից հետո միայն հնարավոր դարձավ *քաղաքատնտեսության* պրոբլեմների գիտական լուծումը: Մարքսը ստեղծեց ուսմունք *աշխատանքի* երկակի բնույթի մասին և ցույց տվեց, որ կոնկրետ աշխատանքը ստեղծում է սպառողական *արժեքներ*, իսկ աբստրակտ աշխատանքը նոր արժեքների ստեղծման, արժեմեծացման պրոցես է: Մինչմարքսյան շրջանի տնտեսագետները (Ա. *Սմիթ*, Դ. *Ռիկարդո*) աշխատանքը համարելով *ապրանք*, արժեքի աշխատանքային տեսությունը կանգնեցրին փակուղու առջև: Ապրանքների համարժեքային փոխանա-

կության պայմաններում աշխատանք-ապրանքը նույնպես պետք է փոխանակվի իր արժեքով, որն անհնարին է դարձնում շահույթի առաջացման գիտական բացատրությունը: Մարքսը ցույց տվեց, որ աշխատանքն *աշխատուժի* սպառման պրոցես է, որը ապրանք լինել, գնվել ու վաճառվել չի կարող: Ապրանք է աշխատուժը, որի արժեքը որոշվում է բանվորի և նրա ընտանիքի անդամների պահպանման համար անհրաժեշտ կենսամիջոցների արտադրության վրա ծախսված անհրաժեշտ աշխատաժամանակով, իսկ սպառողական արժեքը, նոր արժեք ստեղծելու, արժեքները մեծացնելու նրա ունակությունն է: Աշխատուժ-ապրանքի և նրա առանձնահատկությունների մասին ուսմունքի շնորհիվ պարզվեց, որ *հավելյալ արժեքը* ոչ թե կապիտալի բնական, կենսաբանական հատկությունն է, այլ կապիտալիստական հասարակության երկու գլխավոր դասակարգերի՝ կապիտալիստների և բանվորների արտադրական հարաբերությունների ծնունդը, կապիտալիստների կողմից պրոլետարիատի շահագործման արդյունքը:

Լուծելով հավելյալ արժեքի ստեղծման պրոբլեմը՝ Մարքսն ուսումնասիրել է բանվոր դասակարգի շահագործման աստիճանի բարձրացման և հավելյալ արժեքի մեծացման եղանակները: Առաջինը բացարձակ հավելյալ արժեքի արտադրությունն է, երբ կապիտալիստը երկարացնում է աշխատանքային օրը և բարձրացնում աշխատանքի լարունությունը: Աշխատօրը երկարացնելու կապիտալիստի իրավունքը հիմնված է *արժեքի օրենքի* վրա: Նա, որպես աշխատուժ-ապրանքի տեր, կարող է իր գնած ապրանքը սպառել ցանկացած ժամանակընթացքում: Բայց բանվորը քաղաքականապես ազատ է, ճորտ կամ ստրուկ չէ և ձգտում է սահմանափակել աշխատանքային օրը: «Հետևապես, այստեղ ստացվում է մի անտինոմիա,— գրել է Մարքսը,— իրավունքը հակադրվում է իրավունքին, ընդ որում երկուսն էլ հավասարապես վավերացվում են ապրանքների փոխանակության օրենքով: Երկու հավասար իրավունքների բախման ժամանակ վճիռը պատկանում է ուժին» («Կապիտալ», h. 1, էջ 246): Աշխատանքային օրվա սահմանների վերլուծությամբ նույնպես Մարքսը գիտականորեն հիմնավորել է կապիտալիստական կարգերի դեմ բանվոր դասակարգի պայքարի անհրաժեշտությունը: Երկրորդ եղանակը հարաբերական հավելյալ արժեքի ստացումն է աշխատանքային օրվա կառուցվածքի փոփոխմամբ, երբ արտադրության միջոցների կատարելագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման հետևանքով իջնում է աշխատուժի վերարտադրության համար անհրաժեշտ կենսամիջոցների արժեքը, և մեծանում հավելյալ աշխատաժամանակը: Կապիտալիստական արդյունաբերության զարգացման երեք փուլերի՝ պարզ կոոպերացիայի, մանուֆակտուրայի և խոշոր մեքենական արտադրության ուսումնասիրության ընթացքում Մարքսը լուսաբանել է հարաբերական հավելյալ արժեքի ստացման մեթոդների էությունը և ցույց տվել, որ կապիտալիստական արտադրության զարգացումը գերազանցապես հարաբերական հավելյալ արժեքի արտադրության պրոցես է: Աշխատանքի բաժանման հետևանքով արտադրության պրոցեսը դառնում է ավելի պարզ, որակազրկում է աշխատուժը, արտադրության մեջ են ներգրավվում բանվորի ընտանիքի անդամները, իջնում է աշխատուժի արժեքը: Աշխատանքի մասնագիտացման շնորհիվ մեծ չափերով բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը, բովանդակազրկվում է բանվորի աշխատանքը: Այս պրոցեսն ավարտվում է խոշոր մեքենական արտադրության ժամանակ, երբ աշխատանքն ամբողջովին ենթարկվում է կապիտալին, իսկ բանվորը դառնում մեքենայի մի պտուտակը: Արդի գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում ավտոմատ մեքենաների ու սարքավորումների արմատավորումն արտադրության մեջ անհամեմատ ավելի է խորացնում բանվորների և մեքենաների հակամարտ հակասությունները:

Հավելյալ արժեքի տեսությունը, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, Մ. տ. ու-ի անկյունաքարն է, որի շնորհիվ միայն Մարքսը կարողացավ գիտական հիմքի վրա դնել արժեքի աշխատանքային տեսությունը և տալ աշխատավարձի, շահույթի, տոկոսի և ռենտայի բովանդակության գիտական բացատրությունը: Աշխատավարձը բնութագրելով որպես աշխատուժի արժեքի փոխակերպված ձև, Մարքսը բացահայտեց կապիտալիստական շահագործման էությունը, ցույց տվեց, որ շահույթը, տոկոսը և ռենտան բանվորի անվճար աշխատանքի յուրացման ձևերն են, հավելյալ արժեքի փոխակերպված արտահայտությունները:

Պատմական մատերիալիզմի հետ հավելյալ արժեքի տեսությունը Մարքսի երկրորդ խոշոր հայտնագործությունն է, որի շնորհիվ սոցիալիզմի ուսմունքը ուտոպիայից դարձավ գիտություն: Կապիտալիստական արտադրության զարգացման բովանդակությունը բանվոր դասակարգի շահագործման աստիճանի բարձրացման ուղիով հավելյալ արժեքի անընդհատ մեծացումն է, որի հետևանքով խորանում են արտադրության այդ եղանակին ներհատուկ հակասությունները (տես *Կապիտալիզմի հիմնական տնտեսական հակասություն*), պարբերաբար բռնկվում գերարտադրության *տնտեսական ճգնաժամեր*: Ուսումնասիրելով կապիտալիզմի զարգացման օրինաչափությունները, Մարքսը հայտնագործեց *կապիտալիստական կուտակման ընդհանրական օրենքը*, ըստ որի՝ հասարակության մի բևեռում փոքրաթիվ շահագործողներն առավել մեծ չափերով են կուտակում հասարակական հարստությունը, իսկ մյուսում տեղի է ունենում *բանվոր դասակարգի դրության բացարձակ և հարաբերական վատթարացում*:

Կապիտալի կուտակմանը զուգընթաց ուժեղանում են պրոլետարիատի հեղափոխական շարժումները, հասունանում են սոցիալիստական հեղափոխության օբյեկտիվ և սուբյեկտիվ նախադրյալները. բարձրանում է արտադրության հանրայնացման աստիճանը, արտադրական հարաբերությունները չեն համապատասխանում արտադրողական ուժերի բնույթին և արգելակում են դրանց զարգացումը: Բանվոր դասակարգն ուժեղանում է, բարձրանում է նրա կազմակերպվածության և ինքնագիտակցության աստիճանը, աշխատավոր զանգվածները պրոլետարիատի և նրա կոմունիստական ավանգարդի գլխավորությամբ համախմբվում և ոտքի են ելնում շահագործողական կարգերի դեմ. «Հնչում է կապիտալիստական մասնավոր սեփականության ժամը: Սեփականազրկողներին սեփականազրկում են» («Կապիտալ», h. 1, էջ 796): Մարքսը պրոլետարական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի ուսմունքը համարել է իր գլխավոր հայտնագործությունը, որի տնտ. պատվանդանը հավելյալ արժեքի տեսությունն է: Գիտական սոցիալիզմը խարսխվելով կապիտալիստական արտադրության զարգացման օրինաչափությունների ուսումնասիրության վրա՝ օրգանապես ձուլվում է սոցիալիստական հեղափոխության հետ, որի սիրտը, Մարքսի արտահայտությամբ, պրոլետարիատն է, իսկ գիտական կոմունիզմի ուսմունքը՝ այդ շարժման գլուխը: Մ. տ. ու., որը ստեղծագործորեն զարգացրեց և շարունակեց Վ. Ի. Լենինը (տես *Մարքսիզմ-լենինիզմ*), սոցիալիստական երկրներում կոմունիզմի կառուցման գիտական հիմքն է, կապիտալի աշխարհում շահագործման լծի դեմ աշխատավորության պայքարի տեսական հզոր զենքը:

*Ն. Թովմասյան*

**ՄԱՐՔՍԻԶՄ**, տես *Մարքսիզմ-լենինիզմ*:

**ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄ**, փիլիսոփայական, տնտեսագիտական և սոցիալ-քաղաքական հայացքների գիտական համակարգ. գիտություն աշխարհի ճանաչման և հեղափոխական վերափոխման, բնության, հասարակության և մարդկային մտածողության զարգացման օրենքների, *բանվոր դասակարգի*, կեղեքվող ու շահագործվող զանգվածների հեղափոխական պայքարի, *կոմունիզմի* կառուցման մասին: Մ-լ-ի հիմնադիրներն են Կ. *Մարքսը* և Ֆ. *Էնգելսը*, նրա զարգացման գործում անգնահատելի ներդրում ունի Վ. Ի. *Լենինը*: Մ-լ. մշտապես հարստանում է կոմունիստական և բանվորական կուսակցությունների տեսական գործունեությամբ: Մարքսի և Էնգելսի ուսմունքը՝ մ ա ր ք ս ի զ մ ը, որպես բուրժ. կարգերի դեմ բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի հզոր զենք, հանդես եկավ XIXդ. 40-ական թթ.. երբ արդեն շեշտակի ի հայտ էին եկել կապիտալիստական հասարակության ներքին հակասությունները, երբ պրոլետարիատը պատմական ասպարեզ էր իջել իբրև ինքնուրույն քաղ. ուժ:

Մարքսը և Էնգելսը, վերլուծելով բուրժ. հասարակարգի հակասությունները, XIXդ. 1-ին կեսի սոցիալ-քաղաքական իրադրությունը, փիլ. և տնտեսագիտական մտքի պատմական ժառանգությունը, բնագիտության նորագույն հայտնագործությունները, վճռական շրջադարձ կատարեցին հեղափոխական դեմոկրատիզմից դեպի դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը: Նրանք ձևակերպեցին տեսության դերի մասին դրույթը, ցույց տվեցին, որ առաջավոր տեսությունը կարող է նյութական ուժ դառնալ, բարեփոխել հասարակությունը:

Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «*Կոմունիստական կուսակցության մանիֆեստը*» (1848) երկը ազդարարեց մարքսիզմի, որպես ավարտուն գիտական ուսմունքի, վերջնական ձևավորումը: Մարքսիզմի կարևորագույն տեսական աղբյուրներն են՝ անգլ. քաղաքատնտեսությունը, գերմ. փիլիսոփայությունը, ֆրանս. ուտոպիական սոցիալիզմը: Մարքսն ու Էնգելսը ստեղծագործաբար մշակեցին մարդկային ողջ մտավոր հարստությունը, հաղթահարեցին նախորդ հասարակական մտքին բնորոշ իդեալիզմն ու հակապատմականությունը, քննադատաբար վերաիմաստավորեցին նյութական ու հոգևոր կյանքի բոլոր արմատական պրոբլեմները՝ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի հիմքերի վրա խարսխելով իրենց գիտական ուսմունքը: Դրանով արմատական հեղափոխական շրջադարձ կատարվեց մարդկային մտքի զարգացման մեջ: Մարքսիզմը դարձավ մարդկության ստեղծած հոգևոր արժեքների բարձրագույն արգասիքը:

Մարքսիզմը բաղկացած է երեք, օրգանապես միմյանց հետ փոխկապակցված մասերից՝ փիլիսոփայություն (*դիալեկտիկական մատերիալիզմ ու պատմական մատերիալիզմ*), *գիտական կոմունիզմ*, *քաղաքատնտեսություն*: Մարքսիստական փիլիսոփայությունը ելնում է աշխարհի մատերիականությունից, գտնում, որ նրանում գոյություն ունեցող ամեն բան շարժվող (ինքնաշարժվող) մատերիայի տարբեր ձևերն են: Նյութական աշխարհի բարձրագույն արգասիքը մարդն է, նրա մտածողությունը, մարդկային հասարակությունը: Աշխարհը գոյություն ունի մարդկանց գիտակցությունից անկախ, այն զարգանում է իր բնական օրինաչափությունների: Բայց դա չի նշանակում, թե մարդը, հասարակությունն անզոր են բնության առջև: Ըմբռնելով և ճանաչելով բնության և հասարակության զարգացման օրինաչափությունները՝ մարդիկ, դասակարգերը, ամբողջությամբ վերցրած մարդկությունը, ունակ են գիտակցաբար ներգործելու բնության և հասարակության զարգացման ընթացքի վրա, կերտելու իրենց պատմությունը: Հասարակությունը դիտելով որպես ամբողջական օրգանիզմ՝ Մարքսը և Էնգելսը առաջինը գիտականորեն բացատրեցին աշխարհը, հասարակական երևույթները, դրանց զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, ցույց տվեցին, որ մարդկությունը զարգանում է վերընթաց ուղիով՝ հաջորդաբար անցնելով հասարակական տնտ. որոշակի ֆորմացիաներով: Կիրառելով մատերիալիստական դիալեկտիկայի մեթոդը՝ Մարքսը և Էնգելսը ոչ միայն գիտականորեն բացատրեցին բնության և հասարակության զարգացման օրինաչափությունները, այլև դրանց խոր վերլուծության հիման վրա ցույց տվեցին գոյություն ունեցող հասարակական հարաբերությունների վերափոխման ուղիներն ու միջոցները:

Իրենց տեսական գործունեության ողջ ընթացքում Մարքսի և Էնգելսի ուշադրության կենտրոնում են եղել գիտական քաղաքատնտեսության ստեղծման հարցերը: Բուրժ. հասարակության արտադրողական ուժերի և արտադրահարաբերությունների բազմակողմանի վերլուծությունը Մարքսին և Էնգելսին հնարավորություն տվեցին եզրահանգելու, որ մարդկային հասարակության զարգացման ընթացքը պայմանավորված է նյութական կենսապայմաններով, որ այն ենթակա է տնտ. զարգացման օրինաչափություններին, որոնք իրենց դրսևորումն են գտնում ժող. զանգվածների գործունեության մեջ: Այս օրինաչափությունների հետազոտումը ցույց տվեց արտադրության կապիտալիստական եղանակի անցողիկ բնույթը, նրա կործանման և անդասակարգ հասարակարգի հաղթանակի անխուսափելիությունը: Մարքսիզմը ապացուցեց, որ պատմությունը պրոլետարիատի վրա է դրել կապիտալիզմի գերեզմանափորի և կոմունիստական հասարակություն ստեղծողի համաշխարհային պատմական առաքելությունը, և դա պատմական անհրաժեշտություն է: Բանվոր դասակարգը՝ կապիտալիստական հասարակարգի ամենաառաջավոր, հետևողական հեղափոխական դասակարգը, առավելագույն չափով շահագրգռված է բուրժուազիայի տապալմամբ, ունակ է իր շուրջը համախմբելու շահագործվող աշխատավորական լայն զանգվածներին, նրանց գրոհի տանելու կապիտալիստական ստրկության դեմ: Բանվոր դասակարգի հաղթական սոցիալիստական հեղափոխության շնորհիվ կհաստատվի *պրոլետարիատի դիկտատուրա*, որի միջոցով միայն կհարթվի կապիտալիզմից *սոցիալիզմին* անցնելու ճանապարհը:

Դիալեկտիկական մատերիալիզմի և քաղաքատնտեսության անխախտ հիմքի վրա Մարքսը և Էնգելսը մշակեցին գիտական կոմունիզմի տեսությունը: Նրանք ոչ միայն բացատրեցին կապիտալիստական հասարակության զարգացման օրինաչափությունները, այլև գիտականորեն ապացուցեցին սոցիալիզմի հաղթանակի անխուսափելիությունը, դրանով իսկ սոցիալիզմը ուտոպիայից վերածելով գիտության: Մարքսը և Էնգելսը սովորեցնում էին, որ բանվոր դասակարգը պետք է սերտ դաշինքի մեջ մտնի բոլոր աշխատավորների և շահագործվողների հետ, որ տարբեր երկրների և ազգերի պրոլետարների, աշխատավոր զանգվածների շահերը նույնն են, նպատակը մեկը՝ կապիտալիզմի ոչնչացում և կոմունիզմի հաստատում, ուստի նրանք պետք է միասնաբար հանդես գան ընդդեմ բոլոր երկրների և ազգերի բուրժուաների: Մարքսիզմը սովորեցնում է, որ պրոլետարիատի պայքարի ու կազմակերպման սկզբունքը մեկն է՝ *ինտերնացիոնալիզմը*:

Մարքսը և Էնգելսը ցույց տվեցին, որ պրոլետարիատի հաղթական հեղափոխությամբ կավարտվի մարդկային հասարակության նախապատմությունը, և կսկսվի նրա իսկական պատմությունը, այդ պատմության սկիզբը կդրվի մարդու կողմից մարդու շահագործման վերացմամբ: Ստեղծելով իրենց ուսմունքը՝ Մարքսը և Էնգելսը գրեթե կես դար շարունակ անդադրում զարգացնում ու կատարելագործում էին այն, հարստացնում նոր գաղափարներով և հետևություններով: Հասարակական երևույթները վերլուծելիս Մարքսը և Էնգելսը մշտապես ընդգծում էին հեղափոխական տեսության և հեղափոխական պրակտիկայի օրգանական միասնությունը: Նրանք վճռականապես մերժում էին ամեն տեսակի դոգմաները, հանդես գալիս պատրաստի սխեմաների հռչակման, իբրև գալիք բոլոր ժամանակների համար պիտանի, մեկընդմիշտ ձևակերպված որոշումների դեմ: Մերժելով կյանքից, ժող. զանգվածների գործնական պայքարից կտրված հայեցողական տեսությունները՝ մարքսիզմի դասականները անընդհատ դիմում էին պրակտիկային, իրականությանը: Նրանք բազմիցս նշել են, որ իրենց ուսմունքը կենդանի հեղափոխական ուսմունք է, գործողության ուղեցույց, որը պետք է անընդհատ զարգանա և կատարելագործվի, իհարկե, հարազատ մնալով իր էությանը, բովանդակությանը, ոգուն:

Բանվոր դասակարգի, աշխատավոր զանգվածների առջև Մարքսի ու Էնգելսի մեծագույն ծառայություններից մեկն այն է, որ նրանք ելնելով դասակարգային պայքարի պատմական փորձից, պրոլետարիատի հեղափոխական պրակտիկայի խոր վերլուծության միջոցով ցույց տվեցին, որ իր համաշխարհային-պատմական առաքելությունը կատարելու համար պրոլետարիատը պետք է ունենա սեփական քաղ. կուսակցություն, և անդուլ գործունեություն ծավալեցին այդպիսի կուսակցություն ստեղծելու համար: 1848—49-ի բուրժ. հեղափոխությունից հետո եկած ժամանակաշրջանը նշանավորվեց Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի՝ միջազգային պրոլետարիատի ուժերի համախմբմանն ուղղված գործունեությամբ, բանվոր դասակարգի ինտերնացիոնալիստական կուսակցությունների ստեղծմամբ: Նրանց ջանքերով 1864-ի սեպտեմբերին հիմնվեց *Ինտերնացիոնալ I*, որը կոչված էր կապիտալիստական ճնշման դեմ մղվող պայքարում համախմբելու բանվոր դասակարգի քաղ. բոլոր ջոկատները: XIX դ. 70—80-ական թթ. Եվրոպայի մի շարք երկրներում ձևավորվեցին պրոլետարիատի սոցիալ-դեմոկրատական կուսակցությունները:

Ասպարեզ գալուց անմիջապես հետո մարքսիզմը գործնական ստուգման ենթարկվեց բանվոր դասակարգի հեղափոխական մարտերում: Նրան վիճակվեց անզիջում պայքարի մեջ մտնել ինչպես բանվորական շարժումից դուրս նրա բացահայտ հակառակորդների և թշնամական գաղափարախոսությունների, մասնավորապես մանրբուրժուական «ձախերի» (*բակունինիզմ, պրուդոնիզմ*), այնպես էլ այդ շարժման ներսում առաջ եկած աջ օպորտունիստական հոսանքների դեմ: Պայքար մղելով բանվորական շարժման հակոտնյա ուժերի և գաղափարախոսությունների դեմ՝ Մարքսը և Էնգելսը հսկայական եռանդ էին հանդես բերում իրենց գաղափարները լայնորեն տարածելու, դրանց շուրջ տարբեր ազգերի պրոլետարներին համախմբելու համար: Այդ պայքարում մեծ հետևողականություն հանդես բերեցին նաև Մարքսի ու Էնգելսի հավատարիմ աշակերտներ, նշանավոր մարքսիստներ Պ. *Լաֆարգը*, Կ. *Լիբկնեխտը*, Ա. *Բեբելը*, Ֆ. *Մերինգը*, Գ. *Պլեխանովը* և ուրիշներ, որոնք ոչ միայն լայնորեն պրո-

պազանդում էին մարքսիզմի գաղափարները, այլև զարգացնում դրանք, կազմակերպում բանվոր դասակարգի պրակտիկ պայքարը:

XIX դ. վերջին քառորդում կապիտալիզմը թևակոխեց զարգացման բարձրագույն փուլը՝ իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանը: Պատմական այս նոր պայմաններում հասարակական պրակտիկան, բանվոր դասակարգի հեղափոխական շարժումը առաջ քաշեցին նոր ու բարդ խնդիրներ: Անհրաժեշտ էր անհետաձգելիորեն ու սպառիչ պատասխան տալ կյանքի առաջադրած հարցերին: Արևմուտքի ս-դ. կուսակցությունների մեջ հանդես եկան գործիչներ, որոնք օպորտունիստական դիրքերից պահանջում էին մարքսիզմը վերանայել, այն «հարմարեցնել» նոր պայմաններին, դարձնել «ընդունելի» և «տանելի», այսինքն՝ խաթարել նրա հեղափոխական ոգին: Մարքսիզմի դեմ սկսած նոր արշավը գլխավորեցին II Ինտերնացիոնալի (տես *Ինտերնացիոնալ II*) պարագլուխները և տեսաբանները (Է. Բեռնշտայն, Կ. Կաուցկի, Մ. Ադլեր և ուրիշներ): Ոտնահարելով պրոլետարիատի դասակարգային շահերը, օպորտունիստներից ոմանք բացահայտորեն խեղաթյուրում էին մարքսիզմը, մյուսները, հռչակելով իրենց մարքսիզմի հետևորդներ, իրականում դավաճանում էին նրան՝ նպատակ ունենալով այն վերածել անկենդան դոգմայի, բանվոր դասակարգին զրկել պայքարի ճշմարիտ ուղի ցույց տըվող գիտական ուսմունքից:

Սոցիալ-դեմոկրատիայի մեջ հանդես եկած *օպորտունիզմը* և *ռևիզիոնիզմը* բանվորական արիստոկրատիայի վրա բուրժ. գաղափարախոսության ազդեցության դըրսևորման հետևանք էին, արդյունք պրոլետարական կուսակցությունների մեջ մանրբուրժուական տարրերի մեծ հոսքի, որոնք իրենց հետ սոցիալ-դեմոկրատիայի միջավայր էին բերում մանր բուրժուազիային հատուկ անհետևողականությունը, դասակարգային պայքարում նրա տատանումները: Անհրաժեշտ էր մարքսիզմը պաշտպանել նրա բազմաթիվ հակառակորդների հարձակումներից, հակահարված տալ ինչպես բուրժ. գաղափարախոսներին, այնպես էլ օպորտունիզմի պարագլուխներին, ընդհանրացնել պատմական նոր պայմաններում ծավալվող բանվորական շարժման փորձը, մարքսիզմը զարգացնել ու հարըստացնել նոր դարաշրջանի առաջադրած խնդիրներին համեմատ: Պատմական այդ մեծագույն խնդիրը իրականացրել է Վ. Ի. Լենինը:

Լենինը, ելնելով Մարքսի և Էնգելսի տեսական վիթխարի ժառանգությունից, զարգացրեց մարքսիստական փիլիսոփայությունը, քաղաքատնտեսությունը, գիտական կոմունիզմի ուսմունքը, որակական նոր աստիճանի հասցրեց մարքսիզմի հեղափոխական տեսությունը, լուսավորեց բանվոր դասակարգի, Ռուսաստանի և ողջ աշխարհի աշխատավորների ազատագրական պայքարի ուղիները: Իր զարգացման լենինյան փուլում մարքսիզմը արդարացիորեն ստացավ «Մ-լ.» անվանումը: Լ ե ն ի ն ի զ մ ը դարձավ իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների, գաղութատիրության խորտակման և ազգային-ազատագրական շարժումների հաղթանակի, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու և կոմունիստական հասարակարգ կառուցելու դարաշրջանի մարքսիզմը:

Վերլուծելով իմպերիալիզմի փուլում կապիտալիզմի զարգացման առանձնահատկությունները, Լենինը կատարեց դարակազմիկ հայտնագործություն: Նա ձևակերպեց կապիտալիզմի փուլում *կապիտալիզմի տնտեսական և քաղաքական անհամաչափ զարգացման օրենքը* և, ելնելով դրանից, արեց կարևոր տեսական հետևություն, որ պրոլետարական հեղափոխության և սոցիալիզմի հաղթանակը հնարավոր է սկզբում մի քանի կամ նույնիսկ մեկ երկրում, որ ավելին, անհնարին է սոցիալիստական հեղափոխության միաժամանակյա հաղթանակը բոլոր երկըրներում կամ երկրների մեծ մասում, ինչպես ենթադրում էին մարքսիզմի հիմնադիրները: Խորապես մշակելով այն խընդիրները, որոնք դրվել էին բանվոր դասակարգի և նրա քաղ. ավանգարդի առջև, Լենինը նրանց զինեց սոցիալիստական հեղափոխության նոր, ավարտուն տեսությամբ: Վ. Ի. Լենինը մշակեց բուրժուազիայի դեմ բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի ստրատեգիայի ու տակտիկայի հարցերը, բանվորական շարժման մեջ ռևիզիոնիզմի, դոգմատիզմի, «աջ» և «ձախ» օպորտունիզմի դեմ պայքարի սկզբունքները: Նա ստեղծագործաբար զարգացրեց բուրժուադեմոկրատական և սոցիալիստական հեղափոխությունների մեջ բանվոր դասակարգի վճռական դերի, այդ հեղափոխությունների ժամանակ պրոլետարիատի դաշնակիցների, բանվորների և գյուղացիների դաշինքի մասին ուսմունքը: Լենինը հիմնավորեց այդ դաշինքի մեծ նշանակությունը իբրև սոցիալիստական հեղափոխության հաղթանակի, նոր հասարակարգի կառուցման վճռական պայման: Մ-լ-ի մեջ կարևոր ավանդ էր բուրժուադեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի վերաճելու տեսության մշակումը: Լենինը ստեղծագործաբար զարգացրեց պրոլետարիատի դիկտատուրայի մասին ուսմունքը, հեղափոխական պայքարի փորձը, հայտնագործեց պրոլետարիատի դիկտատուրայի լավագույն քաղ. ձևը՝ սովետները: Լենինը ցույց տվեց, որ առանց նոր տիպի պրոլետարական կուսակցություն ունենալու անհնարին է նվաճել իշխանությունը, հաստատել պրոլետարիատի դիկտատուրա, կառուցել սոցիալիզմ և կոմունիզմ: Նա հանճարեղորեն մշակեց այդ կուսակցության գաղափարական, կազմակերպական և տեսական հիմքերը, կուսակցական ղեկավարման սկզբունքները: Նա ստեղծեց Ռուսաստանի բանվոր դասակարգի մարտական ավանգարդը՝ բոլշևիկյան կուսակցությունը (տես *Սովետական Միության կոմունիստական կուսակցություն*), որը ղեկավարեց պրոլետարիատի, աշխատավոր զանգվածների պայքարը ցարիզմի և բուրժուազիայի դեմ: Լենինյան կուսակցության ղեկավարմամբ իրականացվեց 1917-ի *Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը*: Սովետական իշխանության հաղթանակից հետո կոմունիստական կուսակցությունը գլխավորեց Ռուսաստանի ազատագրված ժողովուրդների պայքարը նոր հասարակարգի կառուցման համար:

Պրոլետարիատի հեղափոխական պայքարի հաջող ելքը շատ բանով պայմանավորված էր *ազգային հարցում* ճիշտ դիրքորոշում մշակելուց: Մարքսն ու Էնգելսը ժամանակին մեծ կարևորություն էին տալիս ազգային հարցին, նշելով, որ ճնշված ազգերի ազատագրությունը պայմանավորված է պրոլետարական հեղափոխության հաղթանակով: Նրանք միաժամանակ ցույց էին տալիս, որ հետադեմ ուժերի և դասակարգերի դեմ ուղղված ազգային-ազատագրական շարժումները իրենց հերթին նպաստում են պրոլետարիատի դասակարգային պայքարի հաջող ելքին: Ահա թե ինչու բանվոր դասակարգը պաշտպանում է այդ շարժումները, վճռականապես հանդես գալիս ժողովուրդների ոչ միայն սոցիալական, այլև ազգային ճնշման ու հարստահարման դեմ: Լենինը զարգացրեց ազգային հարցի վերաբերյալ Մարքսի ու Էնգելսի դրույթները, մշակեց կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության հիմնարար սկզբունքները, առաջ քաշեց և հիմնավորեց ազգերի ազատ ինքնորոշման անհրաժեշտության՝ ընդհուպ մինչև նրանց լիակատար առանձնացման և ինքնուրույն պետության ստեղծման գաղափարը: Նա ընդգծում էր, որ ազգային հարցում գլխավորը դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող ընդհանուր պայքարում բոլոր ազգերի աշխատավորների միավորումն է: Լենինը բացատրեց ազգային հարցի կապը գաղութային և գյուղացիական հարցերի հետ, նշեց գաղութային ու կախյալ երկրների զարգացման ոչ կապիտալիստական ուղու հնարավորությունը:

Սկսած XIX դ. 80-ական թվականներից մարքսիզմի գաղափարները սկսում են թափանցել հայ իրականության մեջ: Ռուսաստանի բանվոր դասակարգի հեղափոխական շարժման հերոսական տարեգրության մեջ մեծ ներդրում կատարեցին նաև հայ ժողովրդի անվեհեր զավակները՝ Լենինի հավատարիմ զինակիցներ և աշակերտներ, կոմունիստական կուսակցության ականավոր գործիչներ Ս. *Շահումյանը*, Բ. *Կնունյանցը*, Ս. *Սպանդարյանը*, Ի. *Լալայանցը*, Ա. *Մյասնիկյանը*, Ս. *Կասյանը*, *Կամոն* և ուրիշներ, որոնք պայքարեցին Մ-լ-ի գաղափարների հաղթանակի համար:

Մ-լ. պատմական նոր պայմանների համեմատ ստեղծագործաբար զարգացրին ՍՄԿԿ և եղբայրական մյուս կոմկուսները: ՍՄԿԿ-ն մշակեց կապիտալիստական շըրջապատման մեջ մեկ երկրում սոցիալիզմի կառուցման հնարավորության, սոցիալիստական ինդուստրացման ուղիների, տեմպերի և միջոցների, գյուղատնտեսության կոլեկտիվացման մեթոդների և ձևերի, երկրում կուլտուրական հեղափոխության անցկացման ուղիների, սոցիալիստական հասարակարգի կառուցման և աստիճանաբար կոմունիզմին անցնելու օրինաչափությունների մասին հարցերը: Դրանց իրականացման ընթացքում, պայ-

քարելով «աջ» և «ձախ» օպորտունիզմի և նացիոնալ-ուկլոնիզմի դեմ, կուսակցությունը պայքարել է Մ-լ-ի անաղարտության համար:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ստեղծված պատմական իրադրությունը, *սոցիալիզմի համաշխարհային սիստեմի* առաջացումը, կապիտալիստական կարգի ճգնաժամի խորացումը, *գիտատեխնիկական հեղափոխության* ծավալումը, սոցիալիստական և կոմունիստական շինարարության մեծագույն խնդիրները առաջադրեցին դրանք տեսականորեն ընդհանրացնելու, Մ-լ-ի տեսությունը ավելի հարստացնելու, այն ստեղծագործաբար զարգացնելու և առաջ մղելու պահանջը: ՍՄԿԿ-ն, նրա Կենտրոնական կոմիտեն, ընդհանրացնելով ՍՍՀՄ-ում սոցիալիստական և կոմունիստական շինարարության փորձը, առաջ քաշեցին դեպի կոմունիզմ մեր ժողովրդի առաջընթացի գիտականորեն մշակված ծրագիր: Վերլուծելով սովետական հասարակության զարգացման ընթացքը՝ ՍՄԿԿ-ն ցույց տվեց, որ իրականացված խոշորագույն սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումների գլխավոր արդյունքը մեր երկրում *զարգացած սոցիալիստական հասարակարգի* կառուցումն է: Այդ վերափոխումների հիման վրա առաջ է եկել պատմական նոր ընդհանրություն՝ *սովետական ժողովուրդը*, որը մարմնավորում է ընդհանուր շահերով, գաղափարախոսությամբ, նպատակներով ու իդեալներով միավորված ավելի քան հարյուր ազգերի ու ժողովուրդների աշխատավորների բարեկամությունը, ազգային հարցի լուծման մարքս-լենինյան սկզբունքների ստեղծագործաբար կիրառման ու զարգացման, կոմունիստական ու սոցիալիստական շինարարության ընթացքում ՍՍՀՄ ժողովուրդների մերձեցման, նրանց համախմբման ու միավորման պրոցեսը: Արդի փուլում ՍՍՀՄ-ում լուծվում է *կոմունիզմի նյութատեխնիկական բազայի* ստեղծման *խնդիրը*՝ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների բազայի վրա: Այս պայմաններում կուսակցությունը առաջ քաշեց գիտատեխնիկական նվաճումները տնտեսության սոցիալիստական կարգի առավելությունների հետ օրգանապես միացնելու խնդիրը:

ՍՄԿԿ-ն, եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցությունների հետ, մեծ աշխատանք է կատարել սոցիալիստական ընկերակցության երկրներում սոցիալիզմի կառուցման հարուստ փորձը տեսականորեն ընդհանրացնելու ուղղությամբ, երկրներ, որոնք իրենց առանձնահատկություններով հանդերձ, ամենուրեք դրսևորեցին զարգացման ընդհանուր օրինաչափություններ: Այդ կուսակցությունները հետազոտում են *աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման* օրինաչափություններն ու միտումները, սոցիալիստական *ինտեգրացիայի* սկզբունքները և ամբողջությամբ վերցրած սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման հետ կապված այլ հարցեր: Եղբայրական կոմունիստական և բանվորական կուսակցությունների հետ միասին ՍՄԿԿ-ն ներդրում կատարեց միջազգային բանվոր դասակարգի պայքարի հարուստ փորձի տեսական ընդհանրացման գործում: Այդ ուղղությամբ ՍՄԿԿ տեսական գործունեությունն իր արտացոլումն է գտել նրա համագումարների ու պլենումների փաստաթղթերում, կուսակցության Կենտկոմի որոշումներում, կուսակցության ղեկավարների զեկուցումներում ու ճառերում, ինչպես նաև եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունների փաստաթղթերում:

Իրենց տեսական գործունեությամբ ՍՄԿԿ-ն և եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցությունները ցույց են տալիս, որ ջանալով հարմարվել երկու հակադիր սիստեմների պայքարի պայմաններին, օգտագործելով գիտատեխնիկական հեղաշրջման արդյունքները, արդի իմպերիալիզմը ձեռք է բերել որոշ նոր գծեր: Արդի գիտատեխնիկական հեղաշրջումը, արագացնելով էկոնոմիկայի հանրայնացման պրոցեսը, միաժամանակ տանում է դեպի սոցիալական հակամարտությունների է՛լ ավելի մեծ մասշտաբներով վերարտադրություն և կապիտալիզմի զարգացման մեջ նոր հակասությունների առաջացում: Այս ամենը մեծացնում է կապիտալիզմի անկայունությունը, առաջ է բերում սոցիալ-քաղաքական խոր ճգնաժամեր, խորացնում է զանգվածների հեղափոխական գիտակցությունը, դասակարգային մարտերի նոր ալիք բարձրացնում կապիտալիզմի միջնաբերդերում: Ժամանակակից պետ. մոնոպոլիստական կապիտալիզմի ճգնաժամը ընդգրկում է բուրժ. հասարակության բոլոր՝ տնտ., քաղ., գաղափարախոսական, բարոյական բնագավառները, այսինքն՝ կրում է համընդհանուր բնույթ: Այս հանգամանքը ավելի նպաստավոր պայմաններ է ստեղծում իմպերիալիստական տիրապետության դեմ, հանուն դեմոկրատիայի և սոցիալիզմի մղվող պայքարի:

ՍՄԿԿ ուշադրության կենտրոնում են գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների հակաիմպերիալիստական, ազգային-ազատագրական շարժման, նրանց պայքարի աճի ու զարգացման հեռանկարների հարցերը: Ազգային-ազատագրական շարժման համար կարևոր նշանակություն ունի արդի դարաշրջանում հեղափոխական պայքարի դեմոկրատական և սոցիալական խնդիրների մերձեցման, նախկին գաղութային երկրների զարգացման ոչ կապիտալիստական ուղու հնարավորության պրոբլեմների տեսական մշակումը մարքս-լենինյան գիտության կողմից:

Մ-լ. կապիտալիստական ստրկության դեմ պայքարող բոլոր մարտիկների միջազգային համերաշխության ինտերնացիոնալ հիմքն է:

ՍՄԿԿ և եղբայրական կոմունիստական կուսակցությունների մշտական ուշադրության կենտրոնում են աջ օպորտունիզմի և ռևիզիոնիզմի, դոգմատիզմի և «ձախ» աղանդավորական ավանտյուրիզմի բոլոր դրսևորումների դեմ պայքարը, նրանք հետևողականորեն պաշտպանում են մարքս-լենինյան ուսմունքի անաղարտությունը: Ժամանակակից ռևիզիոնիստները, նահանջելով Մ-լ-ի հիմնարար դրույթներից, ամենից առաջ պրոլետարական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի գաղափարներից, առաջ են քաշում մարքսիզմի զանազան «տարբերակներ», միմյանց են հակադրում Մարքսի, Էնգելսի, Լենինի հայացքները, առանձնապես մեծ ջանքեր են գործադրում խեղաթյուրելու մարքսիզմի լենինյան փուլը՝ լենինիզմը (տես *Հակակոմունիզմ*): Արդի ժամանակաշրջանում հակալենինյան բոլոր հոսանքների մեջ ամենավտանգավորը Մ-լ-ի մանրբուրժուական ազգայնական մաոիստական խեղաթյուրումն է (տես *Մաոիզմ*):

Մ-լ. դարձել է պատմության ընթացքն արագացնող նյութական հզոր ուժ: Աշխարհի բոլոր երկրներում, տիրելով միլիոնավոր աշխատավոր զանգվածների մտքին, նա անհաղթ դրոշ է դարձել կապիտալիստական ստրկության դեմ մղվող պայքարում: Իմպերիալիզմի ու հետադիմության ուժերի նկատմամբ սոցիալիզմի և դեմոկրատիայի հաղթանակը արդիականության պատմական օրինաչափությունն է: *Հ. Սիմոնյան*

**ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ ՍՄԿԿ ԿԿ-ԻՆ ԱՌԸՆԹԵՐ (ՄԼԻ)**, կուսակցական կենտրոնական գիտահետազոտական հաստատություն: Հրատարակման է նախապատրաստում մարքսիզմ-լենինիզմի դասականների ստեղծագործությունները, կուսակցության համագումարների, կոնֆերանսների, ԿԿ պլենումների արձանագրությունները, որոշումները, պատմակուսակցական նյութեր և փաստաթղթեր, Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի և նրանց զինակիցների կենսագրությունները, մարքս-լենինյան տեսության, ՍՄԿԿ պատմության, կուսակցական շինարարության, գիտական կոմունիզմի, միջազգային կոմունիստական շարժման պատմության հարցերին նվիրված մենագրություններ և ժողովածուներ: Հիմնվել է Մոսկվայում, 1931-ի նոյեմբ. 3-ին՝ Մարքսի և Էնգելսի ինստ-ի և Լենինի ինստ-ի միավորումով: Ներկա անվանումը կրում է 1956-ից: ՄԼԻ մասնաճյուղեր ունի միութենական հանրապետություններում (բացի ՌՍՖՍՀ-ից), Մոսկվայում և Լենինգրադում: Երևանում է *մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղը*:

**ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԻՆՍՏԻՏՈՒՏԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՍՆԱՃՅՈՒՂ**, ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտ, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղ, Հայաստանում պատմական կուսակցական գիտության կենտրոն: Աշխատում է ՀԿԿ Կենտկոմի անմիջական ղեկավարությամբ. գիտամեթոդական ղեկավարությունը ստանում է ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստ-ից:

1923-ի մարտին ՀԿ(բ)Կ II համագումարը խնդիր դրեց սկսել Հայաստանի կոմկուսի պատմության ուսումնասիրման և գիտական մշակման գործը: Նույն թվականի մայիսի 20-ին ՀԿ(բ)Կ Կենտկոմի նախագահությունը որոշեց ստեղծել ՀԿ(բ)Կ

Կենտկոմին առընթեր կուսակցության պատմության բյուրո (նախագահ՝ Ա. Հովհաննիսյան, անդամներ՝ Ա. Մռավյան, Ե. Չուբար): Բյուրոյի քարտուղար նշանակվեց Մ. Աղայանը: Բյուրոն համառոտ կերպով անվանվում էր Կուսպատ (կուսակցության պատմություն): 1932-ի հուլիսին, ՀԿ(բ)Կ Կենտկոմի որոշմամբ, Կուսպատը վերածվեց Կենտկոմին առընթեր գիտահետազոտական ինստ-ի: Նրան հանձնվեց ՀԿ(բ)Կ Կենտկոմի արխիվը և Հայաստանի հեղափոխության թանգարանը: 1940-ի հունվարին, ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոյի որոշմամբ, կուսպատմության ինստ-ը լուծարքի ենթարկվեց: Արխիվը հանձնվեց ՀԿ(բ)Կ Կենտկոմի անմիջական ենթակայությանը, հեղափոխության թանգարանը դարձավ ինքնուրույն միավոր: Հայրենական պատերազմից հետո նորից դրվեց Հայաստանի կուսպատմության հարցերի գիտամշակման հետազոտական հիմնարկ ունենալու խնդիրը: ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոյի 1947-ի սեպտ. 23-ի որոշմամբ կազմակերպվեց ՀամԿ(բ)Կ Կենտկոմին առընթեր Մարքսի—Էնգելսի—Լենինի ինստ-ի (1957 թվականից կոչվեց ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստ.) հայկ. մասնաճյուղ, որը, փաստորեն, գործել սկսեց 1948-ի սկզբներից: Հետագայում այն դարձավ ՀԿԿ Կենտկոմի ինստ.՝ մնալով նաև ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստ-ի մասնաճյուղ:

Ինստ-ի երկար տարիների աշխատանքի հանրագումարը «Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծեր» (1967) աշխատությունն է: Ուսումնասիրվել, գիտամշակման է ենթարկվել և հրատարակվել հայ ականավոր լենինյանների (Ս. Շահումյան, Ս. Սպանդարյան, Ա. Մյասնիկյան, Բ. Կնունյանց, Ս. Կասյան և ուրիշներ) տեսական ժառանգությունը:

Տևական աշխատանք է տարվել փաստաթղթերի, վավերագրերի, հիշողությունների ժողովածուներ կազմելու և հրատարակելու ուղղությամբ: Ինստ-ում առանձնակի տեղ է հատկացվում մարքսիզմ-լենինիզմի դասականների երկերի հայերեն թարգմանման, խմբագրման և հրատարակման գործին: Հրատարակվել են Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունները: 1941—69-ին իրականացվել է Վ. Ի. Լենինի երկերի ռուս. 4-րդ հրատարակության հայերեն թարգմանությունը և հրատարակումը: 1973-ից ինստ-ը ձեռնամուխ է եղել Վ. Ի. Լենինի երկերի լիակատար ժողովածուի 5-րդ հրատարակության 55 հատորների հայերեն թարգմանության և հրատարակման գործին, մինչև 1981-ի վերջը լույս է տեսել 37 հատոր:

Կուսակցական արխիվում հավաքվում, ֆոնդավորվում և գիտամշակման են ենթարկվում ՀԿԿ պատմության, կուսակցական և պետ. գործիչների գործունեությանը վերաբերող փաստաթղթերը:

1973-ին ինստիտուտը պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

*Գրկ.* Պատմա-կուսակցական գիտության կենտրոնը Հայաստանում, Ե., 1974:

*Հ. Սիմոնյան*

**ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ** ՀԿԿ Կենտկոմի, ստեղծվել է ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ, 1944-ի դեկտեմբերին, Երևանում: Նպատակն է բարձրացնել կուսակցական, սովետական ակտիվի ու մտավորականության տեսական-քաղաքական մակարդակը: 1944—78-ին կոչվել է ՀԿԿ Երքաղկոմի մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարան: 1978-ից վերանվանվել է ՀԿԿ Կենտկոմի մարքսիզմ-լենինիզմի համալսարան: Սկզբնական շրջանում ունեցել է երկու ֆակուլտետ՝ փիլիսոփայության և տնտեսագիտական: Ուսման տևողությունը եղել է մեկ տարի: Համալսարանի առաջին դասախոսներն են եղել Հ. Պողոսյանը, Հ. Թումանյանը, Ղ. Վարդապետյանը և ուրիշներ: Համալսարանն ավարտել է մոտ 18 հզ. մարդ:

Ներկայումս համալսարանի կուսակցական-տնտեսական ակտիվի և գաղափարական կադրերի ֆակուլտետների 16 բաժիններում սովորում է ավելի քան 1600 ունկնդիր: Համալսարանն իր մասնաճյուղերն ունի Լենինականում և Կիրովականում: Գործում են ՍՄԿԿ պատմության, մարքս-լենինյան փիլիսոփայության, քաղաքատնտեսության և կուսակցական պրոպագանդայի մեթոդիկայի ամբիոններ, գիտամեթոդական խորհուրդ: Համալսարանն ունի երկամյա և եռամյա բաժիններ:

*Թ. Հովհաննիսյան*

**ՄԱՑԵՍՏԱ**, բալնեոլոգիական բուժավայր *Սոչիի* կուրորտային շրջանում:

**ՄԱՑԿՅԱՎԻՉՅՈՒՍ**, Մ ա ց կ և ի չ, Անթանաս (1828—1863), հեղափոխական դեմոկրատ, Լիտվայում 1863-ի գյուղացիական ապստամբության ղեկավարներից: Ծագումով՝ ազնվական: Սովորել է Կիևի համալսարանում, ավարտել (1853) հոգևոր ճեմարան: Ռուս և լեհ հեղափոխական դեմոկրատների ազդեցությամբ Մ. հանգել է կալվածատերերի և ցարիզմի դեմ պայքարի գաղափարին: Հանդես է եկել ռուս. հեղափոխական շարժման հետ լիտվացի, լեհ և բելոռուս ժողովուրդների ազատագրական շարժումը միավորելու համար, այդ հայացքները քարոզել գյուղացիներին: 1863-ի ապստամբության ժամանակ ղեկավարել է գյուղացիական զինված մի ջոկատ, ապա գործել ապստամբական միացյալ բանակում՝ Զ. *Սերակովսկու* հրամանատարության ներքո: Վերջինիս զոհվելուց հետո ղեկավարել է Կովենի նահանգի ապստամբական ջոկատները: Ձերբակալվել և մահապատժի է ենթարկվել:

**ՄԱՑՈՅԱՆ** Ստեփան Գրիգորի (ծն. 16.3. 1923, Բաթում), հայ սովետական քիմիկոս: Քիմ. գիտ. դ-ր (1966), պրոֆեսոր (1967), ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ (1974): Ավարտել է Երևանի պոլիտեխնիկական ինստ-ը (1948): 1951-ից աշխատում է ՀՍՍՀ ԳԱ օրգ. քիմիայի ինստ-ում (մինչև 1957-ը կոչվում էր Քիմիայի ինստ.), 1959-ից՝ մոնոմերների և պոլիմերների քիմիայի լաբորատորիայի վարիչ, իսկ 1967-ից՝ նաև դիրեկտոր: Գիտական աշխատանքները վերաբերում են բարձրամոլեկուլային միացությունների քիմիային և օրգ. սինթեզին: Ցիկլոպոլիմերման ռեակցիայի առաջին ուսումնասիրողներից է: Բացահայտել է «ոչ դասական» մոնոմերներից (չզուգորդված դիենային, տրիենային ևն) գլխավոր շղթայում ցիկլային խմբեր պարունակող պոլիմերների առաջացման օրինաչափությունները: Առաջինն է մշակել շղթայում միա- և երկցիկլային օղակներ



Ս. Գ. Մացոյան

պարունակող մի շարք պոլիմերների սինթեզի եղանակները: Ցիկլոպոլիմերման ռեակցիայի միջոցով հնարավոր դարձավ դժվարամատչելի պոլիվինիլացետալների և կետալների, ինչպես նաև մակրոցիկլային պոլիմերների ստացումը: Մ. հեղինակ է հետերոցիկլային միացությունների (պիրոզոլիններ, պիրազոլներ, ֆտալաններ ևն) սինթեզի սկզբունքորեն նոր եղանակների: Նրա մշակած վինիլացետատի սուսպենզային պոլիմերման և օլիգովինիլացետատների ստացման եղանակները ներդրված են Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանում: Պարգևատրվել է Ժողովուրդների բարեկամության շքանշանով:

**ՄԱՑՈՒՈ** Բասյո (իսկական անունը՝ Ջինսիտիրո, 1644—1694), ճապոնացի բանաստեղծ, բանաստեղծության տեսաբան: Հայտնի է դարձել որպես զավեշտական ռ ե ն գ ա յ ո վ (բանաստեղծական ժանր) գրող բանաստեղծ: Հ ո ք ո ւ ժանրի և նրա գեղագիտության հիմնադիրն է: Մ-ի բանաստեղծական ժառանգությունը ամփոփված է 7 անթոլոգիայում, որ ստեղծել են ինքն ու իր աշակերտները («Ձմեռային օրեր», 1684, «Գարնանային օրեր», 1686, «Ամայացած դաշտ», 1689, «Մի պարկ ածուխ», 1694 ևն):

**ՄԱՈՒԶԵՐ** (Mauser), Վ ի լ հ ե լ մ (1834—1882) և Պ ա ու լ (1838—1914), եղբայրներ, գերմանացի ինժեներներ-զինագործներ և ձեռնարկատերեր: 1866-ին ստեղծել են միալիցք հրացան և ատրճանակ, 1896-ին՝ 7,63 *մմ* տրամաչափի ավտոմատ ատրճանակ (*մաուզեր*): 1874-ից՝ Օբերնդորֆի զինագործարանի սեփականատերեր: Մ. եղբայրները ստեղծել են նաև դյուրակիր «քաղաքացիական» ատրճանակ, պահեստատուփավոր հրացան և հրաձգային զենքի այլ տեսակներ:

**ՄԱՈՒԶԵՐ**, առաջին, առավել հզոր ավտոմատ ատրճանակներից. տրամաչափը՝ 7,63 *մմ*, չանջատվող պահեստատուփով՝ 6 և 10, իսկ լրացուցիչի դեպքում՝ 20 փամփուշտով: Հուսալիորեն խոցում էր մինչև 100 *մ* հեռավորությամբ նշանակետը: Ստեղծել են *Մաուզեր* եղբայրները, 1896-ին, կատարելագործվել է 1908-ին: Օգտագործվել է մի շարք երկրների բանակներում:

**ՄԱՈՒՆԱ-ԼՈԱ** (Mauna Loa, հավայերեն, բառացի՝ երկայն լեռ), վահանաձև (հավայան) տիպի գործող հրաբուխ Խաղաղ օվկիանոսի Հավայի կղզում: Բարձրությունը՝ 4170 *մ*: Երկրի ամենաբարձր և

ամենախոշոր (ծավալով) հրաբուխն է: Կազմված է բազալտներից: Ունի զառիկող լանջեր և 6,5 *կմ* շրջագծով խառնարան: Հաճախ են ժայթքումները (վերջին ուժեղ ժայթքումը՝ 1950-ին), որոնց ընթացքում խառնարանում առաջանում է լավային լիճ:

**ՄԱՈՒՆԱ-ԿԵԱ** (Mauna Kea, հավայերեն, բառացի՝ սպիտակ լեռ), վահանաձև (հավայան) տիպի հանգած հրաբուխ Խաղաղ օվկիանոսի Հավայի կղզում: Բարձրությունը՝ 4202 *մ*: Կազմված է օլիվինաբազալտային և անդեզիտային լավաներից: Խառնարանը չի պահպանվել, տափարակ գագաթը գրեթե միշտ ձյունածածկ է (որից և հրաբուխը ստացել է իր անունը):

**ՄԱՈՒՆԹ ՊԱԼՈՄԱՐԻ ԱՍՏՂԱԴԻՏԱՐԱՆ**, Կալիֆոռնիայի տեխնոլոգիական ինստիտուտի աստղագիտական հիմնարկ (ԱՄՆ): Գտնվում է համանուն լեռան վրա, ծովի մակերևույթից 1706 *մ* բարձրության վրա, Կալիֆոռնիայի նահանգում՝ Փասադենա քաղաքից (որտեղ տեղավորված են նրա լաբորատորիաներն ու ղեկավարությունը) 220 *կմ* հվ.: Հիմնվել է 1928-ին: 1948—67-ին Մ. Պ. ա-ի 504 *սմ*-անոց աստղադիտակը ամենամեծն էր աշխարհում (մինչև ՍՍՀՄ-ում 6 *մ*-անոց աստղադիտակի շարք մտնելը): Մյուս աստղադիտակներից ամենանշանավորը Շմիդի 122 *սմ*-անոց խոշորագույն աստղադիտակն է, որով ստացված լուսանկարները լայնորեն օգտագործվում են աշխարհի շատ աստղադիտարաններում և սկզբնաղբյուր են ծառայել բազմաթիվ կարևորագույն աշխատանքների համար: Մ. Պ. ա-ում զբաղվում են աստղերի, միգամածությունների ու գալակտիկաների ուսումնասիրությամբ: Այստեղ են կատարվել մի շարք կարևորագույն հայտնագործություններ (սպիտակ թզուկ աստղեր, ռադիոգալակտիկաներ, քվազարներ, կոմպակտ գալակտիկաներ ևն): Ֆ. Ցվիկիի ղեկավարությամբ հայտնաբերվել և ուսումնասիրվել է գերնոր աստղերի մեծ մասը: Մ. Պ. ա-ում են ստեղծվել երկնքի Պալոմարյան զննության երկգույն քարտեզները: Մ. Պ. ա. գործնական կապեր ունի Բյուրականի աստղադիտարանի հետ. հայ և ամերիկյան աստղագետները, 504 *սմ*-անոց աստղադիտակի օգնությամբ, համատեղ հետազոտություններ են կատարել Բյուրականի աստղադիտարանի աշխատակիցների հայտնաբերած գալակտիկաների ու դրանց խմբերի ուսումնասիրման ուղղությամբ: 1949-ին Մ. Պ. ա. և *Մաունթ Վիլսոնի աստղադիտարանը* վարչականորեն միավորվել են (տես *Հեյլի աստղադիտարաններ*): *Լ. Միրզոյան*

**ՄԱՈՒՆԹ ՍԹՐՈՄԼՈՅԻ ԱՍՏՂԱԴԻՏԱՐԱՆ**, Ավստրալիայի ազգային համալսարանի (Կանբեռայի համալսարան) աստղագիտական հիմնարկ: Գտնվում է Կանբեռայից 11 *կմ* հեռու, ծովի մակերևույթից 768 *մ* բարձրության վրա: Հիմնվել է 1925-ին: Հիմնական գործիքներն են 188 և 127 *սմ*-անոց աստղադիտակները: Մ. Ս. ա-ում զբաղվում են աստղերի, միգամածությունների և գալակտիկաների լուսաչափությամբ և սպեկտրոսկոպիայով, ինչպես նաև Արեգակի և մոլորակների ուսումնասիրությամբ, իրականացվում է ժամանակի ծառայությունը: *Լ. Միրզոյան*

**ՄԱՈՒՆԹ ՎԻԼՍՈՆԻ ԱՍՏՂԱԴԻՏԱՐԱՆ**, Վաշինգտոնի Կարնեգիի ինստիտուտի և Կալիֆոռնիայի տեխնոլոգիական ինստիտուտի աստղագիտական հիմնարկ (ԱՄՆ): Գտնվում է համանուն լեռան վրա, ծովի մակերևույթից 1742 *մ* բարձրության վրա, Կալիֆոռնիայի նահանգում, Փասադենա քաղաքից (որտեղ տեղավորված են նրա լաբորատորիաներն ու ղեկավարությունը) 13 *կմ* հս.: Հիմնվել է 1903-ին: 1917-ին Մ. Վ. ա-ում տեղակայված 254 *սմ*-անոց աստղադիտակը մինչև 1948-ը ամենախոշորն էր աշխարհում: Այն մեծ դեր է խաղացել մեր *Գալակտիկայի* և մյուս գալակտիկաների ուսումնասիրության գործում. մասնավորապես, Գալակտիկայից դուրս այլ գալակտիկաների գոյության ապացույցի, գալակտիկաների (այդ թվում՝ մեր Գալակտիկայի) կառուցվածքի և ձևաբանության ուսումնասիրության, ինչպես նաև *կարմիր շեղման* երևույթի հայտնաբերման համար հիմք են ծառայել այդ աստղադիտակով կատարված՝ Է. Հաբլի, Հ. Շեփլիի և մյուսների դիտումները: Կարևոր աշխատանքներ են կատարվել Արեգակի, աստղերի ու միգամածությունների ֆիզիկայի բնագավառում: Արեգակնային հետազոտությունների նպատակով Մ. Վ. ա-ում մշակվել և առաջին անգամ կիրառվել են աշտարակային դիտակ և սպեկտրոհելիոսկոպ (հետագայում՝ սպեկտրոհելիոգրաֆ): 1949-ին Մ. Վ. ա. և *Մաունթ Պալոմարի աստղադիտարանը* վարչականորեն միավորվել են (տես *Հեյլի աստղադիտարաններ*): Մաունթ Պալոմարի աստղադիտարանում 504 *սմ*-անոց աստղադիտակի տեղակայումից հետո (1945) Մ. Վ. ա-ում հիմնականում զբաղվում են Արեգակի ուսումնասիրությամբ: *Լ. Միրզոյան*

**ՄԱՈՒՐԵՐ** (Maurer) Գեորգ Լյուդվիգ ֆոն (1790—1872), գերմանացի պատմաբան, *համայնքային տեսության* հիմնադիր: Իրավագիտության պրոֆեսոր Մյունխենի համալսարանում (1826-ից): 1832—34-ին հուն. թագավոր Օթոն Բավարացու խնամակալներից էր: 1847-ին փաստորեն բավարական կառավարության ղեկավարն էր (արտաքին գործերի և արդարադատության մինիստր): Քաղ. հայացքներով սահմանադրական միապետության կողմն էր, որը ըստ Մ-ի պետք է հիմնվեր գերմանացիների հարազատ համայնքային սկզբունքների վրա: Մ. գերմ. ժողովրդի պատմության ելակետը համարել է սոցիալական այն կարգը, երբ տիրապետել են հողի կոլեկտիվ սեփականությունն ու նրա համատեղ մշակումը, չի եղել պետություն, իսկ հասարակական գործերը տնօրինել են մարկային (համայնքային) կազմակերպությունները՝ հիմնվելով բոլոր ազատ մարդկանց հավասարության և իրավահավասարության վրա: Մարքսիզմի հիմնադիրները բարձր են գնահատել Մ-ի գիտական ծառայությունը, նշելով, սակայն, նրա մեթոդի որոշ թերություններ:

**ՄԱՈՒՐՅԱՆԵՐԻ ՊԵՏՈՒԹՅՈՒՆ**, ստրկատիրական պետություն Հին Հնդկաստանում: Հիմնել է Չանդրագուպտա Մաուրյան (մ. թ. ա. 317—293): Մ. թ. ա. 314-ին (այլ տվյալներով՝ մոտ 322-ին) գրավել է Մագադհա պետության գահը (այդ թվականը համարվում է Մ. պ-յան հիմնադրման թիվը), դարձել Հյուսիս-Արևմտյան Հնդկաստանի տիրակալը: Մ. թ. ա. 305-ին Չանդրագուպտայի և Սելևկոս I Նիկատորի միջև կնքված հաշտությամբ Սելևկոսը ստացել է 500 մարտական փիղ, զիջել է այժմյան Աֆղանստանի և Բելուջիստանի մի շարք մարզեր: Չանդրագուպտայի որդու՝ Բինդուսարի ժամանակ (մ. թ. ա. մոտ 293—268) Մ. պ. գրավել է Հնդկաստանի մի շարք մարզեր: Մ. պ. հզորության գագաթնակետին է հասել Աշոկայի ժամանակ (մ. թ. ա. 268—232). իր մեջ է ներառել ամբողջ Հնդկաստանը (բացի ծայր հվ-ից): Աշոկայի կառավարման վերջին շրջանում զգացվել են կայսրության թուլացման առաջին նշանները: Աշոկայի հետնորդների ժամանակ Մ. պ. բաժանվել է երկու մասի՝ Արևմտյան և Արևելյան: Մ. թ. ա. II դ. սկզբին Մ. պ-յան հս-արմ. մասը գրավել է Հունա-Բակտրիական թագավորությունը: Վերջին թագավոր Բրիհադրատհի սպանությունից հետո (մ. թ. ա. 187 կամ 185) Մ. պ. դադարել է գոյություն ունենալուց:

Մ. պ. բաժանված էր փոխարքայություններ, նահանգների, շրջանների: Մայրաքաղաքը Պատալիպուտրան էր: Մ. պ. ունեցել է մեծաթիվ բանակ: Պետականքաղաքական կարգը կրել է արխաիկ շատ գծեր. մեծ դեր են կատարել բարձրաստիճան պալատականների խորհուրդը և աստիճանավորների, քաղաքացիների, համայնքի անդամների ժողովները: Աշոկայի ժամանակ հովանավորվել է բուդդայականությունը: Մ. պ. աշխույժ առևտուր է կատարել Ասիայի և միջերկրածովյան հելլենիստական երկրների հետ, դիվանագիտական հարաբերություններ է ունեցել Սելևկյանների, Պտղոմեյանների, Մակեդոնիայի, Կիրենիայի, Էպիրոսի հետ:

*Գրկ.* Бонгард-Левин Г. М., Индия эпохи Маурьев, М., 1973.

**ՄԱՈՒՐՍՏԱԴ** (Maurstad) Ալֆրեդ (ծն. 1896), նորվեգացի դերասան: Ժամանակակից նորվեգական թատրոնի բեմական ռեալիզմի նշանավոր ներկայացուցիչներից: Առաջին անգամ ելույթ է ունեցել 1920-ին և մինչև 1931-ը հանդես եկել Նորվեգական թատրոնում (Օսլո), 1931-ից՝ Ազգային թատրոնի (Օսլո) դերասան: 1949—50-ին ղեկավարել է Տրոնհայմի թատրոնը: Մ-ի ստեղծագործական խոշոր նվաճումը Պեր Գյունտի (Իբսենի «Պեր Գյունտ») կերպարի ստեղծումն է, որով հանդես է եկել Կոպենհագենում, Փարիզում, Վիեննայում և Ստոկհոլմում: Այլ դերերից են՝ Մարկոս Անտոնիոս (Շեքսպիրի «Հուլիոս Կեսար»), Էրազմուս (Հոլբերգի «Էրազմուս Մոնտանուս»), Լինդ (Իբսենի «Սիրո կատակերգություն»):

**ՄԱՔ ԿԻՆԼԻ** (McKinley), Հյուսիսային Ամերիկայի ամենաբարձր լեռնագագաթը Ալյասկայի լեռնաշղթայում: Բարձրությունը 6193 *մ* է: Կազմված է գրանիտներից: Մ-ի ստորոտը ծածկված է փշատերև անտառներով, 1300—1500 *մ*-ից բարձր՝ ձյունով ու սառցադաշտերով:

**«ՄԱՔ-ԴՈՆՆԵԼԼ-ԴՈՒԳԼԱՍ»**, ամերիկյան ավիահրթիռաշինական ընկերություն: Տես *Մոնոպոլիա կապիտալիստական* հոդվածը:

**ՄԱՔ ԴՈՈՒԵԼ**, Մ ա ք Դ ա ու է լ (Mac Dowell), Էդուարդ Ալեքսանդր (1861—

1908), ամերիկացի կոմպոզիտոր և դաշնակահար: Ազգությամբ՝ շոտլանդացի: 1876—78-ին սովորել է Փարիզի կոնսերվատորիայում՝ Ա. Մարմոնտելի (դաշնամուր) և Մ. Սավառայի (կոմպոզիցիա), Մայնի Ֆրանկֆուրտի կոնսերվատորիայում՝ Կ. Հեյմանի (դաշնամուր) և Յո. Ռաֆֆի (կոմպոզիցիա) մոտ: Ստեղծագործական անհատականությունը ձևավորվել է գերմ. ռոմանտիզմի գրական և երաժշտական ավանդույթների ազդեցությամբ: 1888-ից ապրել է Բոստոնում, տվել հեղինակային համերգներ: 1896—1904-ին եղել է Կոլումբիայի համալսարանի երաժշտության ամբիոնի (ԱՄՆ-ում առաջին) ղեկավարն ու պրոֆեսորը: Մ. Դ. ամերիկյան պրոֆեսիոնալ կոմպոզիտորական դպրոցի հիմնադիրներից է: Առաջին ամերիկացի կոմպոզիտորն է, որ օգտագործել է հնդկացիների երաժշտական բանահյուսությունը («Հնդկական սյուիտ» ևն): Գրել է ծրագրային երաժշտություն («Ողբերգական», «Հերոսական», «Նորվեգական» սոնատներ), դաշնամուրային 2 կոնցերտ, մոտ 40 երգ ևն:

**ՄԱՔԵՆԻՍ**, գյուղ Հայկական ՍՍՀ Վարդենիսի շրջանում, շրջկենտրոնից 15 *կմ* հարավ-արևմուտք: Անասնապահական տավարային... տավարական տնտեսությունն զբաղվում է նաև ծխախոտի, հացահատիկի, կերային



Մաքենիս

կուլտուրաների մշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կապի բաժանմունք, կինո, հեռախոսակայան, բուժկայան: Մ-ում պահպանվել է Մաքենյաց վանքը (IX դ.), եկեղեցիներ (X—XIII դդ.), գերեզմանոց խաչքարերով (X—XVII դդ.):

**ՄԱՔԵՆՅԱՑ ՎԱՆՔ**, Մ ա ք ե ն ո ց ա ց վ ա ն ք, ճարտարապետական համալիր ՀՍՍՀ Վարդենիսի շրջանի Մաքենիս գյուղի մոտ: Մ. վ. հայտնի է դեռևս VII դ.: IX—X դդ. եղել է Մեծ Հայքի Գեղարքունի գավառի ամենանշանավոր կրոնական-մշակութային կենտրոնը: Հիմնական խմբի հուշարձանները պարսպապատ (8—9 *մ* բարձրությամբ) տարածքի ներսում են: Կենտրոնում իշխան Գրիգոր Սուփանի կառուցած գլխավոր եկեղեցին է (IX դ. վերջ), որին հվ-արմ-ից կից է ավելի վաղ կառուցված միանավ եկեղեցին, իսկ արմ-ից՝ գավթի պատերի մնացորդները: Եկեղեցուց հվ-արլ. Մ. վ-ի երկրորդ խումբ հուշարձաններն են՝ միմյանց կից երկու միանավ թաղածածկ եկեղեցիներ (IX—X դդ.):



Մաքենյաց վանքի ընդհանուր տեսքը




Մաքենյաց վանքի հատակագիծը

Մ. վ-ի գլխավոր եկեղեցին հատակագծում արտաքինից ուղղանկյուն է, ներսից՝ եռաբսիդ, արմ. ուղղանկյուն խաչթևով (արլ-ում և հս-արմ. անկյուններում ավանդատներ են). հվ-արմ. ավանդատունը չի եղել, այստեղ բարձրացել է ավելի վաղ շինված միանավ եկեղեցի: Սլաքաձև գմբեթակիր կամարների վրա երկաստիճան տրոմպային փոխանցումն է: Պահպանվել են IX—X դդ. քարտաշ վարպետների բնորոշ նշաններ:

*Գրկ.* Մ ն ա ց ա կ ա ն յ ա ն Ս տ., Հայկական ճարտարապետության Սյունիքի դպրոցը, Ե., 1960: Դիվան հայ վիմագրության, պր. 4, Ե., 1973 (կազմ. Ս. Բարխուդարյան):

*Ս. Մնացականյան*

**ՄԱՔԻ** (ֆրանս. maquis՝ մշտադալար փշոտ դժվարանցանելի թփուտներ), 1939—45-ի երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին ֆրանսիական պարտիզանների ջոկատների անվանումներից: Մ. գործել է ֆրանս. կոմկուսի կազմակերպած *Դիմադրության շարժման* կազմում: Շարժմանը մասնակցել են Ֆրանսիայի ազգային հայրենասիրական ուժերը, այդ թվում նաև ֆրանսահայերը: Հայտնի է Փարիզում գործած մարտական ինտերնացիոնալ խումբը, որի ղեկավարն էր բանաստեղծ կոմունիստ Մ. *Մանուշյանը*: *Հ. Լիլոյան*

**ՄԱՔԻԱՅՈԼԻ** (իտալ. macchiaioli,< macchia — բիծ), իտալացի գեղանկարիչների խումբ, որը կազմավորվել է 1860-ին, Ֆլորենցիայում և այդպես է կոչվել գեղանկարչական ազատ մաներա որդեգրելու պատճառով: Խմբի ներկայացուցիչները (գեղանկարիչներ Տ. Սինյորինի, Ջ. Ֆատտորի, Ս. Լեգա, Ջ. Աբատի, խմբի տեսաբան, քանդակագործ Ա. Չեչոնի և ուրիշներ), որոնք Ջ. Մաձինիի և Ջ. Գարիբալդիի ղեկավարած ազգային-ազատագրական շարժման մասնակիցներ էին, իրենց արվեստում քարացած ու փքուն ակադեմիզմին հակադրեցին դեմոկրատական սյուժեներ: Նրանք պատկերում էին անցած պատերազմի դրվագները, նրա մասնակիցներին, հարազատ բնությունը, հաճախ աշխատում պլեներում: Մ-ի ստեղծագործություններին բնորոշ են մոտիվների կենսական ճշգրտությունը, լակոնիզմը, հորինվածքների ազատ, պատահական բնույթը, երբեմն հյութեղ գունաբծերի հակադրամիասնությունը: 1880-ական թթ. խումբը կազմալուծվել է: Մ-ի որոշ ներկայացուցիչներ հարել են իմպրեսիոնիզմին:

**ՄԱՔԻԱՎԵԼԻ** (Machiavelli) Նիկոլո (1469—1527), իտալացի քաղաքագետ, պատմաբան, գրող, ռազմական տեսաբան: Ծնվել է աղքատացած ազնվականի ընտանիքում: 1498-ից եղել է Ֆլորենցիայի Հանրապետության Տասի խորհրդի անդամ, կատարել դիվանագիտական հանձնարարություններ: 1512-ին, *Մեդիչիների* բռնակալության վերահաստատումից հետո, հեռացվել է ծառայությունից և աքսորվել իր կալվածքը (Ֆլորենցիայի մոտ): Մ. պետության պրոբլեմը մեկնաբանել է ոչ թե աստվածաբանության, այլ աշխարհիկ դիրքերից, փորձել է բացատրել հասարակական զարգացման օրենքները: Որպես կրքոտ հայրենասեր մեծապես կարևորել է Իտալիայի միավորումը: Նա քննադատել է ազնվականությանն ու հոգևորականությանը, նրանց համարել հասարակության և Իտալիայի միավորման թշնամիներ: Մ. չափավոր դեմոկրատ էր, հանրապետության կողմնակից, բայց գտնում էր, որ Իտալիայի միավորումը պահանջում է ուժեղ պետականության ստեղծում, որի համար ընդունելի են նույնիսկ ծայրահեղ միջոցները՝ բռնություն, խաբեություն, սպանություն, դավաճանություն ևն (աղավաղելով և միակողմանիորեն բացատրելով Մ-ի ուսմունքը, նրա հակառակորդները, մասնավորապես ճիզվիտները, մուծել են «մաքիավելականություն» տերմինը, որ նշանակում էր բարոյականության նորմերն արհամարհող քաղաքականություն): Մ. գտնում էր, որ պատմությունն ունի իր օբյեկտիվ օրինաչափությունը, որ նրան հատուկ է իրադարձությունների պատճառական կապը: Պատմության շարժիչ ուժ է համարել քաղ. պայքարը, որը դրսևորվում է աղքատների ու հարուստների («նիհար» և «գեր» մարդկանց) դասակարգային հակամարտության մեջ: Մ. թեև վախենում էր «անկազմակերպ ժողովրդի» շարժումից և «խռոված ամբոխից»,


Ն. Մաքիավելի

սակայն գտնում էր, որ ժողովուրդը իր ամբողջության մեջ ուժեղ է և պետության հիմքն է:

Մ. կանոնավալային երգերի, սոնետների, նովելների և գրական այլ ժանրի երկերի հեղինակ է: Հայտնի է նրա «Մանդրագոլա» կատակերգությունը, որտեղ ծաղրել է սնահավատությունը, խրախուսել ազատ, անկաշկանդ սերը: Նրա հերոսները Վերածննդի ոգով օժտված անհատներ են, որոնք հաշվի չեն առնում եկեղեցական «դասական վարքի» նորմերը և վարվում են մարդկային բնության համաձայն՝ հակադրվելով հոգևորականների կեղծ բարեպաշտությանն ու այլասերվածությանը:

Ռազմ. տեսության վերաբերող երկերում («Ռազմական արվեստի մասին», 1521) կարևորել է կանոնավոր բանակը (վարձկանի փոխարեն), քննել զորքի տեսակների, ռազմ. ստրատեգիայի, տակտիկայի ևն հարցեր:

1559-ին կաթոլիկ եկեղեցին արգելել է Մ-ի երկերը: Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը բարձր են գնահատել Մ-ի հասարակական-քաղաքական հայացքներն ու ռազմագիտական տաղանդը:

*Երկ.* Opere, Mil.-Naples, 1954; Соч., т. 1, М.—Л., 1934; О военном искусстве, М., 1936.

*Գրկ.* Маркс К. и Энгельс Ф., Соч., 2 изд. (ըստ անվանացանկի): Մխիթարյան Գ., Սոցիոլոգիական ուսմունքների պատմություն, պր. 3, Ե., 1977, էջ 32—44: Նույնի, Կամքի ազատության պրոբլեմը իտալական վերածնության շրջանում (Ն. Մաքյավելի), «ԲԵՀ» 1978, № 1: Грамши А., Избр. произв, пер. с итал., т. 3, М., 1959, с. 111—29, 159—61; Де Санктис Ф., История итальянской литературы, пер. с итал., т. 2, М., 1964, с. 70—146; Вайнштейн О. Л., Западно-европейская средневековая историография, М.—Л., 1964, с. 276—86.

*Գ. Մխիթարյան*

**ՄԱՔՈՔ**, 1. ջուլհակահաստոցի աշխատանքային օրգան. նախատեսված է միջնաթելի անցկացման համար և պարունակում է այնպիսի քանակությամբ թել, որ բավարարի հաստոցի երկարատև աշխատանքին: Մ. պատրաստում են փայտի ամուր տեսակներից, մամլած փայտանյութից: 2. Մ. երկթել (մաքոքային) կարման կարի մեքենաներում, թելը կարի մեջ մտցնող աշխատանքային օրգան:

**ՄԱՔՍԱՅԻՆ ՏԱՐԻՖ**, *մաքսատուրքերի* դրույքների համակարգված ամբողջություն, որ սահմանվում է տվյալ երկրի ներմուծվող ապրանքները հարկելու համար: Ընդգրկում է հարկվող ապրանքների անվանումն ու դասակարգումը, տուրքերի դրույքներն ու հարկման եղանակները, ինչպես նաև արտահանումը, ներմուծումը կամ առանց վերաբեռնման փոխադրումը (տրանզիտ), առանց տուրքի թույլատրվող և արգելված ապրանքների անվանացանկը: XVII դ-ից կիրառվել է Արևմտյան Եվրոպայի երկրներում: Տարբեր պետություններում ապրանքները Մ. տ-ում խմբավորվում են ըստ արտադրական և ծագման (կենդանական, բուսական, հանքային) հատկանիշների, վերամշակման աստիճանի (հումք, կիսաֆաբրիկատ, պատրաստի արտադրանք): Մ. տ-ի դրույքներն ըստ կառուցվածքի լինում են պարզ՝ երբ դրանք միանական են բոլոր երկրներից ներմուծվող ապրանքների համար, և բարդ՝ երբ նույն ապրանքների համար կիրառվում են մի քանի դրույքներ (գերակշռող ձև): Կապիտալիստական պետությունները Մ. տ. սահմանում են միակողմանի, պայմանագրային և միակողմանի-պայմանագրային ձևերով: Պայմանագրային տարիֆի դրույքները միակողմանի սահմանված տարիֆի բարձրագույն դրույքների համեմատ ցածր են: Միակողմանի-պայմանագրային Մ. տ. հնարավորություն է տալիս տվյալ պետության հետ առևտրական պայմանագրեր չկնքած երկրների ապրանքների նկատմամբ կիրառել մաքսատուրքերի ամենաբարձր, իսկ մյուս երկրներից ներմուծվող ապրանքների նկատմամբ՝ համեմատաբար ցածր դրույքներ: Անգլիայում կիրառվում են Մ. տ-ի բարձր, արտոնյալ (Բրիտանական համագործակցության, Ազատ առևտրի եվրոպական ասոցիացիայի, ԵՏՀ-ի անդամ-երկրների և Իռլանդիայի համար), երրորդ երկրների պատրաստի արտադրանքի համար՝ ամենաբարձր, կիսաֆաբրիկատների համար՝ միջին, հումքի և պարենի համար՝ ցածր դրույքներ: Ներմուծվող հումքի և պարենի շատ տեսակներից տուրքեր չեն գանձվում:

Զարգացող մի շարք երկրներում ներմուծվող մեքենաների, սարքավորումների, արդ. հումքի և պարենի համար սահմանված են Մ. տ-ի ցածր, իսկ պերճանքի առարկաների, տեքստիլ արտադրանքի և կոշիկի համար՝ խիստ բարձր դրույքներ:

ՍՍՀՄ-ում և սոցիալիստական մյուս երկրներում Մ. տ-ի դրույքները 2—3 անգամ ցածր են կապիտալիստական պետությունների սահմանած դրույքներից: Զարգացող հարևան երկրներից ներմուծվող ապրանքների համար ՍՍՀՄ-ում կիրառվում են արտոնյալ դրույքներ, իսկ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի զարգացող երկրների հետ առևտուրը կատարվում է առանց մաքսատուրքերի:

**ՄԱՔՍԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, պետության արտաքին առևտրական գործունեություն, որ կարգավորում է ապրանքների արտահանման ու ներմուծման ծավալը, կառուցվածքն ու պայմանները: Արտահայտելով առևտրական կապիտալի շահերը, XVII—XVIII դդ. կապիտալիստական երկրների Մ. ք-յան նպատակը ներմուծվող ապրանքներից բարձր *մաքսատուրքեր* գանձելու միջոցով առևտրական հաշվեկշռի ակտիվացումն էր (տես *Մերկանտիլիզմ*): Արդ. կապիտալիզմի զարգացման շրջանում, սկսած XVIII դ. վերջերից, սահմանվում էին հովանավորական բարձր տուրքեր, որոնք նպաստում էին ազգային արդյունաբերության ստեղծմանն ու զարգացմանը (տես *Հովանավորման համակարգ*): XIX դ. կեսերից, որոշ երկրներում (Անգլիա, Ֆրանսիա, Գերմանիա ևն) կիրառվում էր ազատ առևտրի քաղաքականություն (տես *Ֆրիթրեդերականություն*), որի հետևանքով հովանավորական սահմանափակումները հիմնականում վերացվեցին: Իմպերիալիզմի փուլում Մ. ք-յան միջոցներն օգտագործվում են վաճառահանման շուկաների, կապիտալի ներդրման ոլորտների համար մոնոպոլիաների պայքարում և էկոնոմիկայի պետական-մոնոպոլիստական կարգավորման նպատակով: 1930-ական թթ. գերարտադրության համաշխարհային ճգնաժամերի պայմաններում Մ. ք. արտահայտվում էր ներմուծման տուրքերի բարձրացմամբ: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, քայքայված տնտեսության վերականգնման համար անհրաժեշտ սարքավորում և սպառման ապրանքներ ձեռք բերելու նպատակով, Արևմտյան Եվրոպայի երկրներում սկզբում կիրառվում էին ցածր, ապա՝ բարձր (սեփական արտադրության զարգացումը հովանավորելու համար) մաքսատուրքեր: Ժամանակակից պայմաններում իմպերիալիստական տերություններն օգտագործում են Մ. ք-յան հարձակողական հովանավորման և տնտ. էքսպանսիայի մեթոդներ: Դրանք արտահայտվում են որևէ երկրի կամ երկրների խմբի կողմից մեկ կամ մի քանի պետությունների տնտ. շրջափակման մեջ՝ ապրանքների արտահանումը դադարեցնելու կամ ընդհատելու նպատակով (մաքսային շրջափակում), Մ. ք-յան բնագավառում համատեղ գործողություններ իրականացնելու համար պետությունների միավորման (մաքսային միություն) ու խտրական մաքսատուրքեր կիրառելու մեջ, մաքսային պատերազմներում ևն: Սակայն համաշխարհային սոցիալիզմի հզորության ու հեղինակության աճը, զարգացող երկրների ազգային էկոնոմիկայի ամրապնդումն ու միջազգային տնտ. համագործակցության զարգացումը ստիպում են նրանց այդ երկրների նկատմամբ առավել ճկուն Մ. ք. վարել. ներմուծման տուրքերը կրճատվում են, կնքվում են առևտրի կամ տնտ. համագործակցության երկարաժամկետ պայմանագրեր ևն: Առևտրի մասին ԱՄՆ-ի կոնգրեսի 1974-ի դեկտեմբերին ընդունված օրենքների համաձայն, ՍՍՀՄ-ի նկատմամբ ԱՄՆ-ի Մ. ք. կրում է խտրական բնույթ:

Զարգացող երկրների Մ. ք. իրականացվում է ելնելով իրենց տնտ. և քաղ. ինքնուրույնության ապահովման, ազգային էկոնոմիկայի ամրապնդման ու զարգացման (որին նպաստում է նաև սոցիալիստական երկրների Մ. ք.) շահերից և ունի հովանավորական բնույթ:

Սոցիալիստական երկրների Մ. ք. հիմնվում է միջազգային առևտրում կողմերի հավասարության և փոխշահավետության սկզբունքի պահպանման վրա, միմյանց հետ փոխհարաբերություններում հաշվի է առնում յուրաքանչյուր երկրի և ամբողջ սոցիալիստական ընկերակցության շահերը: Տես նաև *Մաքսային տարիֆ*:

**ՄԱՔՍԱՅԻՆ ՕՐԵՆՍԳԻՐՔ**, իրավաբանական համահավաք ակտ ՍՍՀՄ-ում, որով

կարգավորվում են մաքսային հիմնարկների կազմակերպման և գործունեության իրավահարաբերությունները: Հաստատվել է ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության 1964-ի մայիսի 5-ի հրամանագրով: Բաղկացած է երեք հատվածից՝ «մաքսային կառավարման կազմակերպումը», «մաքսային գործառնություններ» (մաքսային վերահսկողության ընդհանուր դրույթներ, բեռների ջրային, երկաթուղային, ավտոմոբիլային, օդային փոխադրումների, միջազգային փոստային առաքումների սահմանով անցնող քաղաքացիների ուղեբեռների մաքսային վերահսկողության կանոններ, մաքսային գանձույթներ ևն), «մաքսային կանոնների խախտման ու *մաքսանենգության* համար պատասխանատվություն»:

*Մ. Հովհաննիսյան*

**ՄԱՔՍԱՆԵՆԳՈՒԹՅՈՒՆ**, ապրանքների և այլ արժեքների ապօրինի անցկացումը պետական սահմանից: ՍՍՀՄ-ում Մ-յան համար նախատեսվում է քրեական և վարչական պատասխանատվություն: Քրեական օրենսգրքով Մ-յան համար սահմանվում է ազատազրկում՝ 3—10 տարի ժամկետով, գույքի բռնագրավումով, և աքսորով՝ 2—5 տարի ժամկետով, կամ առանց աքսորի (ՀՍՍՀ քրեական օրենսգիրք, հոդված 73): Վարչական պատասխանատվություն նախատեսող Մ-յան դեպքում բռնագրավվում են մաքսանենգային առարկաները, փոխադրման և այլ միջոցները, գանձվում է մաքսանենգային առարկաների մոտավոր արժեքը, սահմանվում է տուգանք:

**ՄԱՔՍԱՊԵՏՅԱՆ** Համլետ Վարդանի (ծն. 12.7.1920, Երևան), հայ սովետական ինժեներ-մեխանիկ: Պահեստի ինժեներ-գնդապետ: Տեխ. գիտ. դ-ր (1966), պրոֆեսոր (1966): ՍՄԿԿ անդամ 1940-ից: Ավարտել է Լենինգրադի ռազմատրանսպորտային ակադեմիան (1951): 1961—65-ին եղել է ՀՍՍՀ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության պետական կոմիտեի նախագահի տեղակալ: 1966-ից Հայկ. գյուղատնտեսական ինստ-ի ավտոմոբիլների ամբիոնի վարիչն է: Հիմնական աշխատությունները վերաբերում են ավտոմոբիլների դինամիկայի, հուսալիության և անվտանգության հարցերին:

*Երկ.* Ավտոմոբիլի տեսություն, Ե., 1963: Ավտոմոբիլ, Ե., 1973: Надежность тормозных механизмов автомобилей, Е., 1965.

*Հ. Աղոնց*

**ՄԱՔՍԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ**, արքունի գործակալություն Կիլիկյան Հայաստանում: Գործակալը կոչվել է պռոքսիմոս, ղեկավարել պետ. եկամուտների, մաքսերի ու տուրքերի գանձումը, ներքին և արտաքին առևտրական հարաբերությունները: Նրան են ենթարկվել քաղաքների, նավահանգիստների ու մաքսատների վերակացուները՝ կապիտանները կամ մինապանները, ինչպես նաև ներքին հարկագանձումները, շուկաների չափ ու կշիռները հսկող մանր պաշտոնյաները՝ դուկերը, ձեռներեցները, «հարկնոր տանուտերերը» ևն:

**ՄԱՔՍԱՏՈՒՆ**, ՍՍՀՄ արտաքին առևտրի մինիստրության համակարգում գործող պետական հատուկ մարմին, որն ապահովում է պետական սահմանով բեռների փոխադրումն ու մաքսատուրքերի գանձումը: Սովորաբար Մ-եր (կամ մաքսակետեր) կազմակերպվում են սահմանամերձ գոտիներում՝ նավահանգիստներում (ծովային, գետային), երկաթուղային կայարաններում, ավտոերթուղային հանգուցակետերում և պետության խոշոր քաղաքներում: ՀՍՍՀ-ում գործում են երկու Մ-եր՝ Լենինականում (առաջինը՝ Հայաստանում) և Երևանում: Մ-երը վերահսկում են մաքսային կանոնների կատարումը, հաշվառում են ներմուծվող և արտահանվող ապրանքը, բեռն ընդունում են ի պահ, ստուգում են բովանդակությունը, գանձում տուրքերը, պայքարում մաքսային կանոնների խախտումների ու *մաքսանենգության* դեմ: ՍՍՀՄ-ում, ինչպես նաև սոցիալիստական մյուս երկրներում, Մ-երի հիմնական նպատակը պետության արտաքին առևտրի մենաշնորհի ապահովումն է:

*Մ. Հովհաննիսյան*

**ՄԱՔՍԱՏՈՒՐՔԵՐ**, պետական դրամական տուրքեր, որ գանձվում են տվյալ երկիր ներմուծվող ապրանքներից, ունեցվածքից և այլ արժեքներից: Մ-ի դրույքները սահմանվում են *մաքսային տարիֆով*: Առաջացել են որպես վաճառականներին մատուցվող ծառայությունների վարձ՝ նավահանգստային շինություններից, պահեստներից, ինչպես նաև կշեռքներից օգտվելու համար: Կապիտալիզմի ժամանակ Մ. փոխարկվել են ներքին առևտրի և ազգային տնտեսության որոշ ճյուղեր արտասահմանյան ապրանքների մրցակցությունից պաշտպանելու միջոցի: Ըստ հարկման օբյեկտի Մ. լինում են ներմուծման, արտահանման և տրանզիտային: Վերջին երկուսը ժամանակակից կապիտալիստական երկրներում գրեթե չեն օգտագործվում: Տիրապետող են ներմուծման Մ., որոնք մոնոպոլիաների համար առևտրական պատերազմների, *դեմպինգի*, տնտեսապես կախյալ երկրների կողոպուտի, ազգային արտադրությունն արտասահմանյան մրցակցությունից պաշտպանելու միջոց են: Զարգացող երկրները Մ. օգտագործում են ազգային տնտեսության ամրապնդման, զարգացման և պետ. բյուջեի եկամուտներն ավելացնելու նպատակով: Ըստ գանձման եղանակի լինում են առանձնահատուկ Մ., որի դեպքում գանձումը կատարվում է կայուն դրույքներով՝ ներմուծվող ապրանքների հատից, միավորից, չափից, կշռից ևն, և գնային Մ., երբ գանձումը կատարվում է տոկոսներով՝ ապրանքների գներից: Երբեմն օգտագործվում են խառը (առանձնահատուկ-գնային) և նույն ապրանքի նկատմամբ տարբեր Մ.: Ըստ մաքսային տարիֆի կառուցվածքի Մ. լինում են տարբերական, հովանավորական, արտոնյալ, հակադեմպինգային ևն: Առաջին դեպքում նույն ապրանքի համար սահմանվում են Մ-ի մի քանի դրույքներ (անվանական, արտոնյալ, նվազագույն, միջին, առավելագույն): Օգտագործվում է որպես տընտեսության պետ. մոնոպոլիստական կարգավորման, ինչպես նաև արտաքին առևտրում տարբեր երկրների միջև խտրականություն դնելու միջոց: Հովանավորական Մ. կիրառվում են արտասահմանից որոշ ապրանքների ներմուծումը, ինչպես նաև սեփական հումքի ու կիսաֆաբրիկատների արտահանումը խոչընդոտելու, հայրենական արդյունաբերության համար լավագույն պայմաններ ստեղծելու, մենաշնորհային բարձր գներ սահմանելու և այլ նպատակներով: Արտոնյալ Մ. սահմանվում են մեկ կամ մի քանի երկրների համար հատուկ բարենպաստ մաքսային կարգ ստեղծելու նպատակով: Հակադեմպինգային Մ., որպես լրացուցիչ, սովորականից բարձր տուրքեր, ներմուծող երկըրներում կիրառում են այն դեպքում, երբ արտահանողներն արտաքին շուկաներում ապրանքները վաճառում են ներքին շուկայի գներից ցածր գներով. ներքին շուկայի և արտասահմանյան գների տարբերությունն է:

ՍՍՀՄ-ում և սոցիալիստական մյուս երկրներում Մ. արտաքին առևտուրը կարգավորելու, կապիտալիստական և զարգացող երկրների հետ տնտ. փոխշահավետ հարաբերություններ ստեղծելու և ընդլայնելու, սոցիալիստական էկոնոմիկան համաշխարհային կապիտալիստական շուկայի տարերային ներգործությունից պաշտպանելու միջոց են: ՍՍՀՄ-ում սահմանվում են ներմուծվող ապրանքներից գանձվող Մ-ի նվազագույն և առավելագույն դրույքներ: Նվազագույնը կիրառվում է այն երկրների նկատմամբ, որոնք ներմուծվող սովետական ապրանքների համար ապահովում են առավել բարենըպաստ կարգ, առավելագույնը՝ այն պետությունների նկատմամբ, որոնք այդպիսի կարգ չեն ապահովում կամ խախտում են առևտրական պայմանագրերը: Արտահանման տուրքեր ՍՍՀՄ-ում սովորաբար չեն կիրառվում, բացառությամբ հնարժեք և արվեստի այն գործերից, որոնք կարող են արտահանվել ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրության հատուկ թույլտվությամբ: Ներմուծման Մ. են գանձվում միջազգային փոստով ՍՍՀՄ առաքվող, ինչպես նաև ուղեբեռների և ձեռնածանրոցների իրերից, եթե դրանք ենթակա են Մ-ով հարկման:

Հ ա յ ա ս տ ա ն ու մ Մ. գանձվել են անցահարկի, մաքսի նաև *բաժի* ձևով: Միջին դարերում Մ-ին համապատասխանել է անցահարկը կամ մաքսը, որ սկըզբում գանձվում էր վաճառականներից՝ որոշակի տերիտորիայի սահմանագլխին, կամուրջների, գետանցների մոտ ևն, հետագայում՝ իրացված ապրանքից (վաճառավայրերում): Կիլիկիայի հայկ. պետությունում օտարերկրյա առևտրականները Մ. էին վճարում տեղափոխվող կամ վաճառվող ապրանքներից՝ որոշակի տոկոսներով (սովորաբար՝ 4, արտոնությունների դեպքում՝ 1—2% կամ առանց տուրքի): Բացի տոկոսային հաստատուն Մ-ից կիրառվում էին մասնակի Մ., որոնք գանձվում էին որոշ ապրանքներից (գինի, յուղ, անասուններ, ոսկի, թանկարժեք քարեր, պղինձ, երկաթ, բամբակ, կտորեղեն ևն): Մ. էին գանձվում նաև կիրճերով, լեռնանցքներով, կամուրջներով, գետանցներով, ֆեոդալների կամ ամբողջ Կիլիկիայի տերիտորիայի վրայով կատարվող փոխադրումների, շուկայում վաճառասեղան ունենալու համար, նավահանգիստներում խարսխվող նավերից, օտարերկրյա վաճառականների անձնական իրերից: XIV—

XVIII դդ. Հայաստանում Մ. եղել են տարատեսակ և կամայական: Յուրաքանչյուր նվաճող կիրառում էր որոշակի մաքսային տարիֆ՝ փոփոխում դրանք իր շահերից ելնելով: *Մաքսատները* ցրված էին բոլոր առևտրական ճանապարհների վրա և այնքան շատ էին, որ Մ. գանձելու իրավունքը հաճախ կապալով տրվում էին մասնավոր անձանց: XIX դ. սկզբից եվրոպական և ասիական երկրներից ապրանքները նպաստավոր պայմաններով ներմուծվում էին Անդրկովկաս, ապա արտահանվում Պարսկաստան և Թուրքիա: Անդրկովկաս ներմուծվող ապրանքներից գանձվում էին 5% Մ., իսկ Պարսկաստան առաքվող ապրանքները չէին հարկվում: Ընդլայնվել էր առևտուրը Ռուսաստանի և Պարսկաստանի միջև, կարգավորվել մաքսային համակարգը: Նախկին տարատեսակ և կամայական մաքսերի փոխարեն սահմանվել էին ընդհանուր Մ.՝ ապրանքի արժեքի 5%-ի չափով: 1821-ից Ռուսաստանում սահմանվեց Մ-ի հովանավորական տարիֆ, որը հետագայում կիրառվեց նաև Անդրկովկասում: Մ-ի 5% դրույքն ուժի մեջ թողնվեց միայն ասիական երկրներից ներմուծվող ապրանքների համար: Եվրոպական երկրների ապրանքներից գանձվում էին բարձր Մ., իսկ ռուս. և տեղական ապրանքները թույլատրվում էին Անդրկովկասից արտահանել առանց հարկման: Մինչև XX դ. սկիզբը ցարական Ռուսաստանի *մաքսային քաղաքականությունն* Անդրկովկասում բազմիցս փոփոխվել է:

*Վ. Ներկարարյան*

**ՄԱՔՍԻՄ** (Maxim) Հայրեմ Սթիվենս (1840—1916), ամերիկացի կոնստրուկտոր և ձեռնարկատեր: 1883-ից մշակել է ավտոմատ զենք. ստեղծել է ավտոմատ հրացանը, ավտոմատ թնդանոթը, հաստոցային գնդացիրը: Անգլիացի գործարանատեր Թ. Նորդենֆելդի հետ Գերմանիայում հիմնել է արագաձիգ թնդանոթների գործարան (1888): Փոքր ետհարվածի սկզբունքով գործող Մ-ի հաստոցային գնդացիրը, վերամշակումից ու կատարելագործումից հետո, ընդունվել է շատ երկրների բանակների սպառազինության մեջ և կիրառվել ընդհուպ մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը (1939—45):

**ՄԱՔՍԻՄ ԳՈՐԿԻ** (մինչև 1939-ը՝ Ալեքսանդրովկա), գյուղ Հայկական ՍՍՀ Ստեփանավանի շրջանում, Լեջան լեռան ստորոտին, շրջկենտրոնից 6 *կմ* հյուսիս-արևելք: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև կերային կուլտուրաների և կարտոֆիլի մշակությամբ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, բուժկայան: Մ. Գ-ում է ծնվել Սովետական Միության հերոս Հ. Բոնդարևը: Հիմնադրել են Սարատովի և Կուրսկի նահանգից եկած ռուսները՝ 1815—20-ին:

Մաքսիմ Գորկի



**ՄԱՔՍԻՄԻԼԻԱՆ** (Maximilian), կայսրեր «Հռոմեական սրբազան կայսրությունում».

**Մ. I** (1459—1519), կայսր 1493-ից, ավստ. էրցհերցոգ: Հաբսբուրգների դինաստիայից: Ֆրիդրիխ III-ի որդին և ժառանգորդը: Մարիա Բուրգունդացու հետ ամուսնությամբ (1477-ին) ձեռք է բերել Նիդերլանդներն ու Ֆրանշ-Կոնտեն: Մ. I սկսել է Հաբսբուրգների ավստ. տիրույթների իրական միավորումը, նրանց կենտրոնացված կառավարումը: Պարտվելով շվեյցարացիների դեմ, այսպես կոչված, Շվաբյան պատերազմում (1499), Մ. I ստիպված էր ճանաչել Շվեյցարիայի վերջնական անջատումը կայսրությունից: Նրա օրոք դիվանագիտական հարաբերություններ են հաստատվել Ռուս. պետության հետ:

**Մ. II** (1527—76), կայսր՝ 1564-ից, ավստ. էրցհերցոգ: Ֆերդինանդ I-ի որդին: Հաբսբուրգների տոհմի անդամների միջև հողերի բաժանումից հետո Մ. II ստացել է Վերին և Ստորին Ավստրիան, Չեխիայի և Հունգարիայի թագը: Ֆինանս. հարցերում ամբողջությամբ կախված լինելով ավստ., չեխ. և հունգ. ֆեոդալներից, հարկադրված մեծ զիջումներ է արել նրանց: Նրա օրոք հաբսբուրգյան տիրույթներում լայնորեն տարածվել է բողոքականությունը:

**ՄԱՔՍԻՄՈՎ** Նիկոլայ Ալեքսանդրովիչ (1880—1952), սովետական բուսաբան: Բույսերի էկոլոգիական ֆիզիոլոգիայի հիմնադիրներից: ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս (1946, թղթակից անդամ՝ 1932-ից): 1902-ին ավարտել է Պետերբուրգի համալսարանը: 1917-ից Թիֆլիսի, Կրասնոդարի, Պետրոգրադի, Սարատովի, Մոսկվայի բուհերի պրոֆեսոր և բույսերի ֆիզիոլոգիայի իր հիմնադրած լաբորատորիաների վարիչ: 1939-ից աշխատել է ՍՍՀՄ ԳԱ Կ. Ա. Տիմիրյազևի անվ. բույսերի ֆիզիոլոգիայի ինստ-ում (1946—52-ը՝ դիրեկտոր): Մ-ի գիտական աշխատանքները հիմնականում վերաբերում են բույսերի երաշտակայունության և ցրտադիմացկունության հարցերին: 1930-ին «Բույսերի երաշտակայունության ֆիզիոլոգիական հիմունքները» (1926) մենագրության համար արժանացել է Լենինի անվ. մրցանակի (1930): Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

**ՄԱՔՍԻՄՈՎԱ** Եկատերինա Սերգեևնա (ծն. 1.2.1939, Մոսկվա), բալետի ռուս սովետական դերասանուհի: ՍՍՀՄ ժող. արտիստուհի (1973): 1958-ին ավարտել է Մոսկվայի պարարվեստի ուսումնարանը (Ե. Գերդտի դասարանը): Նույն թվականից՝ Մեծ թատրոնի մենապարուհի: Լավագույն դերապարերից են՝ Ժիզել (Ադանի «Ժիզել»), Կիտրի (Մինկուսի «Դոն Կիխոտ»), Ֆրիգիա (Խաչատրյանի «Սպարտակ», լենինյան մրցանակ, 1975), Բաբոչկա (Գունոյի «Վալպուրգյան գիշեր»), Օդետա-Օդիլիա (Չայկովսկու «Կարապի լիճը»): Հանդես է եկել նաև «Պիգմալիոն» (1978) հեռուստատեսային ֆիլմ-բալետում: Դերապարերից շատերը Մ. պատրաստել է Գ. Ուլանովայի ղեկավարությամբ: Հյուրախաղերով հանդես է եկել Փարիզում, Լոնդոնում, Նյու Յորքում, Չիկագոյում, Տոկիոյում և այլուր: Երևանում հանդես է եկել 1967-ին: Մ-ին շնորհվել է Ա. Պավլովայի անվ. մրցանակ (1969):

*Գ. Ստեփանյան*

**ՄԱՔՍԻՄՈՒՄ** (< լատ. maximum — առավելագույնը), առավելագույն քանակ, առավելագույն մեծություն, բարձրագույն աստիճան, *մինիմումի* հակառակը: Տես նաև *Մինիմում և մաքսիմում*:

**ՄԱՔՍԻՄՈՒՄ**, գնորոշման և աշխատավարձի հարկադրական համակարգ, որը հաստատվել է Ֆրանսիայում, 1793—94-ին, *Յակոբինյան դիկտատուրայի* ժամանակաշրջանում: Փաստորեն վերացվել է Տերմիդորյան հեղաշրջումից (1794-ի հուլիս) հետո, իսկ պաշտոնապես՝ 1794-ի դեկտ 24-ին:

**ՄԱՔՍՎԵԼ** (Maxwell) Ջեյմս Կլերկ (Clerk) (1831—1879), անգլիացի ֆիզիկոս, մաթեմատիկոս, դասական *էլեկտրադինամիկայի* ստեղծողը, *վիճակագրական ֆիզիկայի* հիմնադիրներից: Լոնդոնի թագավորական ընկերության անդամ (1860): Սովորել է Էդինբուրգի (1847—50) և Քեմբրիջի (1850—54) համալսարաններում: Աբերդինի Մարիշալ-կոլեջի (1856—60), Լոնդոնի (1860—65) և Քեմբրիջի (1871-ից) համալսարանների պրոֆեսոր: 1871-ից եղել է իր հիմնադրած Կավենդիշի լաբորատորիայի դիրեկտորը: Մ-ի գիտական գործունեությունն ընդգրկում է էլեկտրամագնիսականության, գազերի կինետիկ տեսության, օպտիկայի, առաձգականության տեսության և շատ այլ պրոբլեմներ: Իր առաջին աշխատանքը (օվալների մասին) կատարել է դեռևս 15 տարեկան հասակում: 18 տարեկանում գրած մեկ այլ աշխատության մեջ արդեն ուրվագծվում էր մածուցիկ հեղուկներում տանգենցիալ լարումների դեպքում առաջացող երկբեկման երևույթի հետագա հայտնագործության տեսական հիմնավորումը: Գազերի մոլեկուլային-կինետիկ տեսությանը վերաբերող հետազոտություններում լուծել է իդեալական գազի մոլեկուլների՝ ըստ արագությունների բաշխման վիճակագրական խնդիրը (տես *Մաքսվելի բաշխում*), պարզել գազի մածուցիկության կախումը մոլեկուլների արագությունից և ազատ վազքի երկարությունից (1860), արտածել է թերմոդինամիկայի մի շարք կարևոր առնչություններ (1860), փորձով չափել չոր օդի մածուցիկության գործակիցը (1866): Մ., Մ. *Ֆարադեյի* հետ մեկտեղ, *էլեկտրամագնիսական դաշտի* տեսության ստեղծողներից է: Այդ տեսության մեջ Մ. ընդհանրացրել է մակրոսկոպիկ էլեկտրադինամիկայի բոլոր հայտնի



Ջ. Կ. Մաքսվել

փատերը և առաջինն է մուծել շ ե ղ մ ա ն հ ո ս ա ն ք ի պատկերացումը: Էլեկտրամագնիսական դաշտի օրենքները Մ. ձևակերպել է մասնակի ածանցյալներով 4 դիֆերենցիալ հավասարումների տեսքով (տես *Մաքսվելի հավասարումներ*): Այդ հավասարումներից հետևում է *էլեկտրամագնիսական ալիքների* գոյությունը, որը հետագայում փորձով հայտնաբերել է Հ. *Հերցը*: Մ. հանգել է այն եզրակացությանը (1865), որ լույսը նույնպես ունի էլեկտրամագնիսական բնույթ, և ցույց է տվել, որ էլեկտրամագնիսական ցանկացած ալիքի արագությունը վակուումում հավասար է լույսի արագությանը: Մ-ի տեսությունից բխում էր, որ էլեկտրամագնիսական ալիքները ճնշում են գործադրում: *Լույսի ճնշումը* փորձով հայտնաբերել է Պ. Ն. *Լեբեդևը* 1899-ին: Մ. կարևոր ավանդ է ներդրել ֆիզիկայի պատմության մեջ՝ ընդարձակ մեկնաբանությամբ հրատարակելով Հ. *Կավենդիշի*՝ էլեկտրականությանը վերաբերող աշխատանքների ձեռագրերը (1879): Գրել է նաև մի շարք հանրամատչելի գրքեր:

*Երկ.* Избр. соч. по теории электромагнитного поля, М., 1954; Статьи и речи, М., 1968 (կա մատենագիտական ցանկ):

*Գրկ.* Кудрявцев П. С., Максвелл, М., 1976.

**ՄԱՔՍՎԵԼ** (Ջ. *Մաքսվելի* անունով), *մագնիսական ինդուկցիայի հոսքի* միավորը CGS համակարգում: Կրճատ նշանակվում է *մքս* (միջազգային նշանակումը՝ Mx): Մ. այն մագնիսական հոսքն է, որն անցնում է 1 *գաուս* ինդուկցիայով համասեռ մագնիսական դաշտի ուղղությանն ուղղահայաց 1 *սմ*$^2$ մակերեսով. 1 *մքս*= 1 *գս*· 1 *սմ*$^2$: Մ. կարող է սահմանվել նաև էլեկտրամագնիսական ինդուկցիայի երևույթի հիման վրա՝ իբրև այնպիսի մագնիսական հոսք, որի հավասարաչափ նվազման դեպքում (մինչև զրո) 1 *վրկ*-ի ընթացքում այդ հոսքն ընդգրկող փակ կոնտուրում մակածվում է պոտենցիալների տարբերության 1 CGS միավորի ($10^{-8}$*վ*) հավասար էլըու: 1 *մքս*= $10^{-8}$ *վեբեր*:

**ՄԱՔՍՎԵԼԻ ԲԱՇԽՈՒՄ**, գազերում մոլեկուլների արագությունների բաշխման վիճակագրական օրենքը: Սահմանել է Ջ. *Մաքսվելը* 1859-ին: Ջերմային հավասարակշիռ վիճակում (T= const)

$$n(v_x, v_y, v_z)\,dv_x\,dv_y\,dv_z = N\left(\frac{m}{2\pi kT}\right)^{3/2} \times e^{-\frac{m}{2kT}(v_x^2+v_y^2+v_z^2)}dv_x dv_y dv_z, \quad (1)$$

որտեղ $ndv_xdv_ydv_z$-ը այն մոլեկուլների միջին թիվն է, որոնց արագությունների պրոյեկցիաներն ընկած են $(v_x, v_x+dv_x)$, $(v_y, v_y+dv_y)$, $(v_z, v_z+dv_z)$ միջակայքում, N-ը մոլեկուլների ընդհանուր թիվն է, m-ը՝ մոլեկուլի զանգվածը, T-ն՝ բացարձակ ջերմաստիճանը, k-ն՝ Բոլցմանի հաստատունը: (1)-ը ըստ անկյունների (շարժման ուղղությունների) ինտեգրելուց ստացվում է բաշխման օրենքը ըստ արագությունների բացարձակ արժեքների՝

$$n(v)dv = 4\pi N\left(\frac{m}{2\pi kT}\right)^{3/2} e^{-\frac{mv^2}{2kT}}v^2dv: \quad (2)$$

Մ. բ. կարելի է ստանալ Գ ի բ ս ի բ ա շ խ ու մ ի ց, որը ճիշտ է դասական և քվանտային մոտեցման դեպքերում՝ գազերի, հեղուկների և պինդ մարմինների համար ու տալիս է նրանց ջերմային հատկությունների սպառիչ նկարագիրը ջերմային հավասարակշռության ժամանակ: (1)-ը և (2)-ը ունեն վիճակագրական բնույթ և ճիշտ են միայն շատ մեծ N-ի դեպքում: n(v)dv-ն հավանականությունն է այն բանի, որ որևէ մոլեկուլ կունենա (v, v+dv) միջակայքում ընկած արագություն: (2)-ից կարելի է որոշել մասնիկների միջին քառակուսային, միջին և հավանական արագությունները.

$$v_{մք} = \left(\frac{3kT}{m}\right)^{1/2},\ v_{մ} = 2\left(\frac{2kT}{\pi m}\right)^{1/2},\ v_{հ} = \left(\frac{2kT}{m}\right)^{1/2}:$$

Քանի որ մասնիկների շարժման բոլոր ուղղությունները հավասարահավանական են, ապա

$$\bar{v}_x = \bar{v}_y = \bar{v}_z = 0 \text{ և } \overline{v_x^2} = \overline{v_y^2} = \overline{v_z^2} = \frac{\overline{v^2}}{3}:$$

Մ. բ-ման փորձնական հաստատումն ըստացվել է մոլեկուլային փնջերով կատարված փորձերից: Գ. *Սահակյան*

**ՄԱՔՍՎԵԼԻ ՀԱՎԱՍԱՐՈՒՄՆԵՐ**, մակրոսկոպիկ *էլեկտրադինամիկայի* հիմնարար հավասարումները, որոնք նկարագրում են կամայական միջավայրում տեղի ունեցող էլեկտրամագնիսական պրոցեսները: Ձևակերպել է Ջ. *Մաքսվելը* XIX դ. 60-ական թթ. հիմնվելով մի շարք փորձնական օրինաչափությունների և Մ. *Ֆարադեյի* այն գաղափարի վրա, որ լիցքավորված մարմինները փոխազդում են *էլեկտրամագնիսական դաշտի* միջոցով: Մ. հ-ի ժամանակակից տեսքը տվել են Հ. *Հերցը* և Օ. *Հևիսայդը*: Մ. հ. հնարավորություն են տալիս որոշել էլեկտրամագնիսական դաշտի հետ կապված հիմնական մեծությունները տարածության յուրաքանչյուր կետում և ժամանակի ցանկացած պահին, եթե հայտնի են դաշտի աղբյուրները՝ հոսանքի $\vec{j}$ խտությունը և լիցքի $\rho$ խտությունը: Էլեկտրամագնիսական դաշտը վակուումում բնութագրվում է էլեկտրական դաշտի լարվածության $\vec{E}$ և մագնիսական դաշտի ինդուկցիայի $\vec{B}$ վեկտորներով, որոնք հնարավորություն են տալիս որոշել լիցքերի և հոսանքների վրա ազդող ուժերը: Միջավայրում էլեկտրամագնիսական դաշտը նկարագրելու համար մտցըվում են նաև էլեկտրական ինդուկցիայի $\vec{D}$ և մագնիսական դաշտի լարվածության $\vec{H}$ օժանդակ վեկտորները:

Մաքսվելի առաջին հավասարումն ունի հետևյալ տեսքը.

$$\mathrm{rot}\vec{H} = \frac{4\pi}{c}\vec{j} + \frac{1}{c}\frac{\partial\vec{D}}{\partial t}, \quad (1)$$

որտեղ c-ն լույսի արագությունն է: Այս հավասարումն *Ամպերի օրենքի* ընդհանրացումն է փոփոխական դաշտերի համար: Մաքսվելը ենթադրել է, որ ոչ-հաղորդիչ միջավայրում փոփոխական էլեկտրական դաշտն էլ, ազատ լիցքերի շարժումով պայմանավորված հաղորդականության հոսանքի նման, մագնիսական դաշտ է առաջացնում: Մաքսվելի երկրորդ հավասարումը *Ֆարադեյի էլեկտրամագնիսական ինդուկցիայի* օրենքի մաթ. ձևակերպումն է.

$$\mathrm{rot}\vec{E} = -\frac{1}{c}\frac{\partial\vec{B}}{\partial t}: \quad (2)$$

Երրորդ հավասարումը ազատ մագնիսական լիցքերի բացակայության փաստի ձևակերպումն է. $\mathrm{div}\vec{B} = 0$: (3)

Մ. հ-ից չորրորդը լիցքերի փոխազդեցության *Կուլոնի օրենքի* ընդհանրացումն է. $\mathrm{div}\vec{D} = 4\pi\rho$: (4)

Միջավայրում Մ. հ. փակ համակարգ չեն կազմում: Դրանք հարկավոր է լրացնել $\vec{E}$, $\vec{B}$, $\vec{H}$, $\vec{D}$ և $\vec{J}$ վեկտորները կապող երեք առնչություններով, որոնք թելադրըվում են կոնկրետ միջավայրի հատկություններով և վիճակով: Այդ երեք առնչությունները կոչվում են նյութական հավասարումներ: Դրանք նկարագրում են միջավայրի էլեկտրամագնիսական հատկությունները և յուրաքանչյուր միջավայրի համար ունեն որոշակի տեսք: Պարզագույն դեպքում

$$\vec{D} = \varepsilon\vec{E},\ \vec{B} = \mu\vec{H},\ \vec{J} = \sigma(\vec{E} + \vec{E}^{կողմն}),$$

որտեղ ε-ը միջավայրի դիէլեկտրիկ թափանցելիությունն է, μ-ն՝ մագնիսական թափանցելիությունը, σ-ն՝ էլեկտրահաղորդականությունը, իսկ $\vec{E}^{կողմն}$-ը ոչ էլեկտրաստատիկ բնույթի ուժերով պայմանավորված համարժեք դաշտի լարվածությունն է: Երրորդ առնչությունը *Օհմի օրենքն* է՝ գրված դիֆերենցիալ տեսքով:

Վակուումում $\vec{D} = \vec{E}$, $\vec{B} = \vec{H}$:

Մ. հ-ից բխում է լիցքի պահպանման օրենքը՝ $\frac{\partial\rho}{\partial t} + \mathrm{div}\vec{j} = 0$ (*անխզելիության հավասարում*), ինչպես նաև հետևում է, որ էլեկտրամագնիսական դաշտն օժտված է էներգիայով և իմպուլսով: Էներգիան ոչ թե կենտրոնացած է միայն լիցքեր և հոսանքներ պարունակող տիրույթներում, այլ բաշխված է ամբողջ տարածության մեջ $w = \frac{1}{8\pi}(\vec{E}\vec{D} + \vec{B}\vec{H})$ խտությամբ: Ժամանակի ընթացքում փոփոխվող էլեկտրամագնիսական դաշտերի դեպքում Մ. հ-ից բխում է *էլեկտրամագնիսական ալիքների* գոյությունը, որոնք և տեղափոխում են այդ դաշտերի էներգիան: Էներգիայի հոսքի խտությունը որոշվում է *Պոյնտինգի վեկտորով*՝ $\vec{S} = \frac{c}{4\pi}[\vec{E}\vec{H}]$: Եթե էլեկտրամագնիսական էներգիայի շնորհիվ V ծավալում ջերմություն է անջատվում, ապա Մ. հ. հնարավորություն են տալիս եզրակացնել, որ էներգիայի պահպանման օրենքի համաձայն միավոր ժամանակում անջատվող ջերմության քանակը՝ $Q = -\frac{\partial}{\partial t}\int_V w\,dV - \oint_f S_n df$, որտեղ f-ը V ծավալը պարփակող մակերևույթն է, $S_n$-ը՝ $\vec{S}$ վեկտորի պրոյեկցիան f-ի նորմալի վրա: Դաշտի միավոր ծավալի իմպուլսը $\vec{S}$-ի հետ կապ-

ված է $\vec{g}=\frac{\vec{S}}{c^2}$ առնչությամբ: Մ. հ-ից փաստորեն հետևում է, որ էլեկտրամագնիսական դաշտը միշտ օժտված է էներգիայով, իսկ $\vec{S}$ և $\vec{g}$ վեկտորները զրոյից տարբեր են միայն էլեկտրական և մագնիսական դաշտերի միաժամանակ գոյության դեպքում: Մ. հ-ի համաձայն, էլեկտրամագնիսական փոխազդեցությունների տարածման արագությունը վերջավոր է (վակուումում $c=3\cdot10^{10}$ *սմ/վրկ*, իսկ միջավայրում՝ $\frac{c}{\sqrt{\varepsilon\mu}}$): Այս փաստը եղել է հարաբերականության տեսության ստեղծման ելակետերից մեկը: Մ. հ. կազմում են էլեկտրոնիկայի, էլեկտրատեխնիկայի և ռադիոտեխնիկայի հիմքը ու կարևոր նշանակություն ունեն արդի ֆիզիկայի ու տեխնիկայի այնպիսի ուղղությունների զարգացման համար, ինչպիսիք են պլազմայի ֆիզիկան, մագնիսական հիդրոդինամիկան, ոչ գծային օպտիկան, արագացուցչային տեխնիկան:

*Գրկ.* Максвелл Дж., Избр. соч. по теории электромагнитного поля, пер. с англ., М., 1952; Тамм И. Е., Основы теории электричества, 9 изд., испр., М., 1976.

*Վ. Պապոյան*

**ՄԱՔՍՈՒԴՅԱՆ** Մեսրոպ (1876—1918), բանասեր, թարգմանիչ: Սկզբնական կրթությունն ստացել է Կ. Պոլսում: Այնուհետև սովորել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանում, Սորբոնի համալսարանում, հետևել լեզվաբանության դասընթացներին, աշակերտել Ա. Մեյեին: 1902-ին Էջմիածնում ձեռնադրվել է վարդապետ, դասավանդել Գևորգյան ճեմարանում: 1912-ին Փարիզում ֆրանս. լույս է տեսել նրա «Ակնա բարբառը» աշխատությունը: 1914-ին Մ. դարձել է Փարիզի լեզվաբանական ընկերության անդամ: Գրել է հոդվածներ, կատարել թարգմանություններ Հաֆեզից ու Սաադիից, որոնք տպագրել է «Անահիտ», «Լումա», «Արարատ», «Տարազ» պարբերականներում: Լույս է ընծայել Հաֆեզի թարգմանությունների մի ժողովածու («Օտար փունջեր», 1905), ինքնուրույն և թարգմանական գործերի ժողովածու («Հույզեր», 1915), Կալիդասայի «Շակունտալա»-ն (հրտ. 1949) ևն:

*Գ. Ստեփանյան*

**ՄԱՔՍՈՒՏՅԱՆ** Մաքս [15(27).6.1881, Իզմիր —1976, Փարիզ], ֆրանսիական թատրոնի և կինոյի հայազգի դերասան: 1893-ից բնակվել է Ֆրանսիայում: 1904-ին ավարտել է Փարիզի կոնսերվատորիայի դրամատիկական բաժինը, աշակերտել «Կոմեդի ֆրանսեզի» նշանավոր դերասան Սիլվենին: Տրիպուլեի (Վ. Հյուգոյի «Արքայն զբոսնու») մենախոսության համար արժանացել է ողբերգության առաջին մրցանակի: Մ-ի արվեստին բնորոշ է ողբերգական խաղաոճը, ներքին մեծ թափը, հստակ առոգանությունը, շարժուձևի ներդաշնակությունը, անկեղծ կատարումը, որոնց շնորհիվ էլ նա ընդունվել է Փարիզի «Օդեոն» ազգային թատրոնը, հանդես եկել Մոլիերի «Ագահ», «Տարտյուֆ» և այլ պիեսներում: Այնուհետև Մ. խաղացել է Սառա Բեռնարի խմբում՝ կատարելով


Մ. Մաքսուտյան

գլխավոր դերեր, շրջագայել Եվրոպայում, Ամերիկայում (1911): 1919—49-ին նկարահանվել է մի քանի տասնյակ կինոնկարներում՝ «Ադրիենա Լեկուվրյոր», «Էլիզաբեթ, Անգլիայի թագուհին» (Սառա Բեռնարի մասնակցությամբ, 1913), «Երկաթե մարդը» (1914), «Սպիտակ զոգնոց» (1917), «Հոգու աչքերը», «Սիրո շատրվանը» (երկուսն էլ՝ 1924), «Արթնացում» (1925), «Իմ Փարիզը», «Նապոլեոն» (երկուսն էլ՝ 1927), «Կանաչ թութակ» (1928), «Երեք վալս» (1935), «Հիշողությունները ենթակա չեն վաճառքի» (1948) ևն: Մասնակցել է հայ մշակույթին նվիրված երեկոներին:

*Բ. Հովակիմյան*

**ՄԱՔՍՈՒՏՈՎ**, Մ ա կ ս ու տ ո վ, Դմիտրի Դմիտրիևիչ (1896—1964), սովետական գիտնական, աստղագիտական օպտիկայի մասնագետ: ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ (1946): Ավարտել է Պետերբուրգի Ռազմաինժեներական ուսումնարանը (1914): Համաշխարհային առաջին պատերազմի ժամանակ ռուս. բանակի կազմում մասնակցել է Արևմտյան Հայաստանում թուրք. զորքերի դեմ մղվող մարտերին: 1930-ին Լենինգրադի Օպտիկական ինստ-ում կազմակերպել է աստղագիտական օպտիկայի լաբորատորիա: 1952-ից աշխատել է Պուլկովոյի աստղադիտարանում: Աշխատությունները վերաբերում են ստվերային և օպտիկական հետազոտման այլ մեթոդների կատարելագործման, օպտիկական խոշոր սարքերի պատրաստման տեխնոլոգիայի հարցերին: Ստեղծել է մենիսկային համակարգով օպտիկական սարքերը (տես *Մաքսուտովի աստղադիտակ*): Մ. գիտական գործարար կապեր է ունեցել *Բյուրականի աստղադիտարանի* և ՀՍՍՀ ԳԱ Բյուրականի օպտիկամեխանիկական լաբորատորիայի հետ: Այստեղ Մաքսուտովի համակարգի դպրոցական աստղադիտակներ են պատրաստվել ՀՍՍՀ և այլ հանրապետությունների ու սփյուռքի դպրոցների համար: ՍՍՀՄ պետ. մրցանակ (1941, 1946): Պարգևատրվել է Լենինի 2 շքանշանով:

**ՄԱՔՍՈՒՏՈՎԻ ԱՍՏՂԱԴԻՏԱԿ**, մենիսկային համակարգերի սխեմաներով պատրաստված հայելա-ոսպնյակային աստղադիտակների ընդհանուր անվանումը: Այս աստղադիտակները ստեղծել է Դ. Դ. *Մաքսուտովը* 1941-ին: Մ. ա-ում վերացված են գնդային քրոմատիկ աբեռացիաները, կոման (տես *Օպտիկական համակարգերի թերություններ*), իսկ այսպես կոչված Պիացցի-Սմիթի ոսպնյակների Մաքսուտովի առաջարկած վերափոխված տեսակները շտկում են նաև պատկերի դաշտի կորությունը և դիստորսիան: Շմիդի հայելա-ոսպնյակային աստղադիտակների (տես *Շմիդի աստղադիտակ*) համեմատությամբ Մ. ա-ներն ավելի դյուրին են պատրաստվում և ունեն մոտ երկու անգամ ավելի կարճ խողովակ: Աշխարհի խոշորագույն Մ. ա-ները (700 *մմ* տրամագծով մենիսկներով) կառուցված են ՍՍՀՄ-ում և տեղադրված Աբասթումանի աստղաֆիզիկական աստղադիտարանում (ՍՍՀՄ) և Սեռո-Ռոբլե լեռան վրա (Չիլի):

**ՄԱՔՐԱՄՈԼՈՒԹՅՈՒՆ** լ ե զ վ ա կ ա ն, մայրենի լեզուն օտար լեզուների փոխառություններից, ժող. բառերից ու արտահայտություններից, ոճական տարբեր կարգի նորաբանություններից, գրական լեզվի մեջ բնականորեն ներթափանցած բառային ու քերականական չնորմավորված տարրերից անձեռնմխելի, «մաքուր» պահելու կամ մաքրելու ձգտում, արհեստական պայքար, որը չի հենվում տվյալ լեզվի զարգացման միտումները հաշվի առնող գիտական ուսումնասիրության տվյալների վրա և այդ իսկ պատճառով ունի պահպանողական բնույթ: «Մ.» տերմինը երբեմն կիրառում են դրական՝ «լեզվի մաքրության» ձգտելու իմաստով, դրա տակ նկատի ունենալով լեզուն անհարկի օտար բառերով ու արտահայտություններով խճողելու դեմ ուղղված պայքարը:

Սոցիալիստական հասարակարգում լեզվաշինության գործունեությունը արմատապես տարբերվում է լեզվական Մ-ից: Սոցիալիզմի օրոք ազգային գրական լեզուների մշակումը մի կողմից ընթանում է գրական լեզուն բարբառայնությունից, ինչպես նաև անհարկի *օտարաբանություններից* մաքրելու, մյուս կողմից՝ լեզվական Մ-յան դեմ պայքարի ուղիով:

Բացասական չպետք է համարել հայրենիքից կտրված ժողովուրդների ու ազգությունների ներկայացուցիչների՝ լեզվաշինության հարցում ցուցաբերած Մ.: Այսպես, սփյուռքահայերի՝ օտար լեզուների փոխառություններից խուսափելու լեզվաքաղաքականությունը մեծ մասամբ պայմանավորված է ազգային ինքնապաշտպանության առողջ մղումով և որոշ չափով նպաստում է ապազգայնացման ու ձուլման դեմ պայքարին:

*Լ. Ղազանչյան*

**ՄԱՔՐԱՎԱՆՔ**, XIII դարի ճարտարապետական հուշարձանախումբ ՀՍՍՀ Հրազդան քաղաքի արևմտյան կողմում: Գլխավոր՝ Ս. Աստվածածին եկեղեցին մեկ զույգ որմնամույթերով, արմ. կողմում երկհարկանի ավանդատներով գմբեթավոր դահլիճ է: Սրբատաշ քարից կառուց-

Մաքրավանքի (XIII դ.) ընդհանուր տեսքը



ված եկեղեցու գմբեթի կլոր թմբուկի միայն ստորին շարքն է պահպանվել: Արլ. ճակատը մշակված է հովհարաձև վերջավորությամբ եռանկյունաձև զույգ խորշով: Հվ. կողմում երկրորդ՝ միանավ եկեղեցին է, որի ներսակողմը ջլատված է մեկ զույգ զանգվածեղ որմնամույթերով և նրանց միջև ձգվող որմնակամարներով ու թաղակիր կամարով: Ս. Աստվածածին եկեղեցուն արմ-ից կից է եղել գրեթե քառակուսի հատակագծով (հավանաբար 4 մույթերով) գավիթը, որի պատերի հիմքերն են մնացել: Վանքի արլ-ում զարդաքանդակ խաչքարերով փոքրիկ գերեզմանոցն է:

*Մ. Հասրաթյան*

**ՄԱՔՐԵԴԻ** (Macready) Ուիլյամ Չարլզ (1793—1873), անգլիացի դերասան և ռեժիսոր: 1816-ին առաջին անգամ ելույթ է ունեցել Լոնդոնի «Քովենտ-Գարդեն» թատրոնում: 1823-ին տեղափոխվել է «Դրուրի-Լեյն» թատրոն (1841—43-ին՝ ղեկավարներից): 1837—39-ին եղել է «Քովենտ-Գարդեն»-ի ղեկավարներից, բեմադրել Շեքսպիրի «Հենրիխ V», Բայրոնի «Երկու ֆոսկարի»-ն ևն (եղել է նաև գլխավոր դերերի կատարողը): 1851-ին վերջին անգամ կատարել է Մակբեթի (Շեքսպիրի «Մակբեթ») դերը: Խաղացել է նաև Լիր, Համլետ (Շեքսպիրի «Լիր արքա», «Համլետ»): Մ. առաջիններից է, որ բեմում վերականգնել է շեքսպիրյան բնագրերը:

**ՄԱՔՐԻԱԼ**, գյուղ Տրապիզոնի վիլայեթի Խոփա գավառում: 1940-ին Մ-ում կար մոտ 50 տուն հայ բնակիչ, որոնք բռնի մահմեդականացվել էին XVIII դ. սկզբին, բայց մեծ մասամբ պահպանել էին իրենց ազգային սովորույթները: Հիմնական զբաղմունքն էր երկրագործությունն ու անասնապահությունը:

**ՄԱՔՐՄԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐ**, հանքավայրից ստորգետնյա եղանակով օգտակար հանածոների հանման աշխատանքներ: Տարբերում են օգտակար հանածոների համատեղ (համախառն) և անջատ (ընտրողական) հանման Մ. ա.: Վերջինիս դեպքում հանքաքարի, ածխի, ապարի ենթաշերտերի առանձին տեսակները հանվում են զատ-զատ: Մ. ա-ի հետևանքով առաջացած հանքափորվածքներն անվանում են մ ա ք ր մ ա ն փ ո ր վ ա ծ ք ն ե ր, դրանց հանքախորշերը՝ մ ա ք ր մ ա ն հ ա ն ք ա խ ո ր շ ե ր, իսկ օգտակար հանածոների հանույթից առաջացած տարածությունը՝ մ ա ք ր մ ա ն տ ա ր ա ծ ո ւ թ յ ո ւ ն:

**ՄԱՔՈՒՐ ԵՐԿԱԹԻ ԳՈՐԾԱՐԱՆ** Ե ր և ա ն ի փ ո ր ձ ն ա կ ա ն, ՍՍՀՄ սև մետալուրգիայի մինիստրության ձեռնարկություն: Հիմնադրվել է 1960-ին: Մինչև 1976-ը զբաղվել է մետաղներից ու մետաղական միացություններից փոշի ստանալու և արտադրքներ պատրաստելու տեխնոլոգիայի մշակմամբ ու կատարելագործմամբ, ապա՝ տարբեր հալածոների արտադրությամբ: Սերիական արտադրությունն սկսել է 1976-ից, 1980-ին թողարկել 5 մլն ռ. մետաղափոշի և հալածո: Գիտահետազոտական կապերի մեջ է ՍՍՀՄ սև մետալուրգիայի մինիստրության սև մետաղների կենտրոնական, Ուկր. ՍՍՀ հատուկ պողպատի, Դոնեցկի սև մետաղների և այլ ԳՀԻ-ների հետ:

**ՄԱՖԻԱ** (իտալ. mafia), գաղտնի տեռորիստական կազմակերպություն Սիցիլիայում (Իտալիա): Որպես սոցիալական երևույթ ծագել է XVIII դ. վերջին—XIX դ. սկզբին, ֆեոդալական կարգի քայքայման շրջանում, Սիցիլիայի հասարակության սոցիալ-քաղաքական հետամնացության պայմաններում: Արմատավորվել է պատվի, հպարտության, ընտանեկան և տոհմային կապերի խեղաթյուրված հասկացողությունների հիման վրա: Մ. ունի խիստ հիերարխիկ կարգ, կազմակերպչական և նույնիսկ ծիսական ձևեր. մահվան սարսափի տակ գրեթե բացառված է կազմակերպության անդամների (կամ գործունեության) մատնությունը ոստիկանությանը, որը համարյա անխոցելի է դարձնում Մ.: XX դ. Մ-ի գործունեությունը տարածվել է արդ. և քաղ. կյանքի ոլորտը: Մ. օգտագործվում է ընտրական կամպանիաների ժամանակ, սերտ կապի մեջ է Հռոմի դատական ատյանների, ոստիկանության, քաղ. որոշակի շրջանների հետ: 1950—70-ական թթ. պաշտոնապես պայքար է մղվում Մ-ի դեմ, ստեղծվել է հատուկ «Հակամաֆիա» («Անտիմաֆիա») կազմակերպությունը, սակայն Մ. շարունակում է գործել: Սիցիլիական Մ. սերտ կապերի մեջ է ԱՄՆ-ի գանգստերական կազմակերպությունների հետ (տես *Գանգստերիզմ*): ԱՄՆ Մ. թափանցել է XIX դ. վերջին —XX դ. սկզբին: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո համբավավոր է «Կոզա նոստրա» («Մեր գործը») մաֆիական կազմակերպությունը:

**ՄԵԱՆԴՐ**, ո լ ո ր ա ն ա խ շ, երկրաչափական զարդապատկերի տարածված տիպ. ունի ուղիղ անկյունով բեկված



գծի տեսք: Լայնորեն կիրառվել է Հին Հունաստանում: «Մ.» անվանվել է Փոքր Ասիայի ոլորապտույտ Մեանդր (այժմ՝ *Մեծ Մենդերես*) գետին նմանեցնելով:

**ՄԵԳԱ...** (< հուն. μέγας — մեծ), 1. բարդ բառերի սկզբնամաս, որ ցույց է տալիս որևէ բանի մեծ, հսկայական չափերը. օրինակ, *մեգասպորներ*, *մեգաֆոն*: 2. Ելակետային միավորից $10^6$ անգամ մեծ միավորի անվանումը կազմելու համար գործածվող նախածանց: Կրճատ նշանակվում է *Մ* (միջազգային նշանակումը՝ M): Օրինակ, 1 *Մվտ* (մեգավատտ)= $10^6$*վտ*:

**ՄԵԳԱԼԻԹՅԱՆ ԿԱՌՈՒՅՑՆԵՐ** (< հուն. *մեգա...* և *լիթոս...*— մեծ և քար), դամբարանային, մեմորիալ կամ պաշտամունքային հնագույն կառույցներ՝ կերտված անմշակ կամ կոպիտ մշակված մակերեսով մեծածավալ քարերից: Պատկանում են հիմնականում էնեոլիթին և բրոնզի դարին, Հայաստանում և Անգլիայում՝ նաև *նեոլիթին*: Մ. կ. են *մենհիրները*, *կրոմլեխները*, *դոլմենները*, *քարարկղերը*: Մ. կ-ի առանձին տիպ են *վիշապները*, որ հանդիպում են հատկապես Հայաստանում՝ Արագածի և Գեղամա լեռների շրջաններում:



Դոլմեն Սիսիանի «Երիվարաց դաշտ» (Ղոշունդաշ) բնակատեղիում

Մ. կ. կան աշխարհի բազմաթիվ երկրներում, որ հետևանք է ոչ՝ այնքան այդ մշակույթը կրող ցեղերի տեղաշարժերի և մշակութային փոխազդեցությունների, որքան միմյանցից անկախ սոցիալական և աշխարհագրական նույնատիպ պայմանների: Մ. կ. տարածված են Արևմտյան Եվրոպայում (Ֆրանսիա, Անգլիա, Բալկանյան, Պիրենեյան, Ապենինյան, Սկանդինավյան թերակղզիներ), Աֆրիկայի հս-ում (Թունիս, Եգիպտոս), Պաղեստինում, Հնդկաստանում, Կորեայում և այլուր: ՍՍՀՄ-ում Մ. կ. կան Կովկասում, Ղրիմում, Սիբիրում: Հայաստանում պահպանվել են բազմաթիվ Մ. կ.՝ հատկապես Աշտարակի, Սևանի, Սիսիանի շրջաններում: Դրանցից առավել նշանավոր է Սիսիանի «Երիվարաց դաշտ» բնակատեղին (Ղոշուն-դաշ):

*Գրկ.* Ս ա մ ո ւ ե լ յ ա ն Խ., Հին Հայաստանի կուլտուրան, հ. 1, Ե., 1931: Թ ո ր ա մ ա ն յ ա ն Թ., Նյութեր հայկական ճարտարապետության պատմության, [հ.] 1, Ե., 1942:

*Կ. Ղաֆադարյան*

**ՄԵԳԱԼՈՊՈԼԻՍ** (հուն. μεγαλόπολις—շատ մեծ քաղաք, Մեծն քաղաք), քաղաքների վիթխարի կուտակում, գերիշխող ագլոմերացիա: Տերմինն առաջացել է Հին Հունաստանի Արկադիա նահանգի ավելի քան 35 բնակավայրի միաձուլումից գոյացած Մեգալոպոլիս քաղաքի անունից: Արդի Մ-ների հիմնական գծերն են՝ բնակչության գերկուտակումը սահմանափակ տարածության վրա (տես *Ուրբանիզացիա*), կառուցապատման գծային բնույթը (գլխավորապես տրանսպորտային մայրուղիների երկայնքով), ընդհանուր բազմակենտրոն կառուցվածքը (պայմանավորված իրար համեմատաբար մոտ գտնվող խոշոր քաղաքների փոխազդեցությամբ), մարդու գործունեությամբ բնության հավասարակշռության խախտումը: Առաջին անգամ Մ. է անվանվել ԱՄՆ-ի հս-արլ. ծովեզերքի երկայնքով 1000 *կմ* ձգվող ընդարձակ ուրբանիզացված գոտին (լայնությունը տեղ-տեղ՝ մինչև 200 *կմ*), որը բաղկացած է միմյանց հաջորդող Բոստոնի, Նյու Յորքի, Ֆիլադելֆիայի, Բալթիմորի, Վաշինգտոնի ագլոմերացիաներից, ինչպես նաև շղթայի գլխավոր հանգույցների և նրա ծայրամասերում գտնվող ավելի մանր ագլոմերացիաներից (բնակչությունը՝ 40 մլն): Զնավորվող առավել խոշոր Մ-ներից են ԱՄՆ-ում՝ Մերձլճային (20 մլն մարդ) և Հարավկալիֆոռնյանը (12 մլն մարդ), Ճապոնիայում՝ Տոկիո—Օսակայինը (55 մլն մարդ), Մեծ Բրիտանիայում՝ Լոնդոն—Լիվերպուլյանը (30 մլն մարդ), ԳՖՀ-ում՝ Հռենոս—Ռուրյանը (10 մլն մարդ):

*Ս. Քեչիշյան*

**ՄԵԳԱՍՊՈՐԱՆԳԻՈՒՄ**, տես *Սպորանգիում*:

**ՄԵԳԱՍՊՈՐՆԵՐ** (< *մեգա...* և *սպորներ*), մ ա կ ր ո ս պ ո ր ն ե ր, խոշոր սպորներ, որոնցից զարգանում են բարձրակարգ բույսերի իգական նախածիլերը: Առաջանում են մեգասպորանգիումներում (տես *Սպորանգիում*), մեգասպորոցիտի բաժանման հետևանքով: Ոչ սերմնավոր բարձրակարգ բույսերի Մ. ազատվում են մեգասպորանգիումից, իսկ սերմնավոր բույսերի Մ. (սովորաբար 4-ական) գոյանում են սերմնաբողբոջի կենտրոնական մասում՝ նուցելուսում, և միակ հասուն մեգասպորը մշտապես մնում է մեգասպորանգիումի ներսում, որտեղ և տեղի է ունենում իգական գամետոֆիտի զարգացումն ու բեղմնավորումը:

**ՄԵԳԱՐՅԱՆ ԴՊՐՈՑ**, հին հունական փիլիսոփայական ուղղություն (մ. թ. ա. IV դ.), սոկրատեսյան դպրոցներից: Հիմնադիրն է Էվկլիդես Մեգարացին (մ. թ. ա. մոտ 450—380): Մ. դ-ում միահյուսվել են հավերժական ու անփոփոխ միակի (գոյի) վերաբերյալ Պարմենիդեսի ուսմունքը և բարիքի սոկրատեսյան հասկացությունը: Ըստ Էվկլիդեսի, գոյություն ունի միայն մեկ միասնական բարիք, որն անփոփոխ է և հայտնի է նաև ճշմարտություն, խելք, աստված ևն անուններով: Իրերի բազմությունն ու բազմազանությունը հակադրվում են միասնական բարիքին, ուստի ոչ գոյավոր են, ոչ ռեալ: Մ. դ. շարունակել է նաև Զենոն Էլեացու և սոփեստների ավանդույթները. դիալեկտիկական դատողությունների նկատմամբ ունեցած հակվածությամբ այն ստացել է «էրիստիկական (< հուն. ἐριστικά — վիճաբանելու արվեստ) դպրոց» անվանումը: Մեգարացի Ստիլպոնի բարոյագիտական հայացքները մոտ էին կինիկներին, իսկ Զենոն Կիտիոնցին Մ. դ. կինիկյան դպրոցի հետ միասին վերածեց *ստոիկյան դպրոցի*:

**ՄԵԳԱՖՈՆ** (< *մեգա...* և *...ֆոն*), ձայնի ուժեղացման համար կիրառվող կոնաձև խոսափող (նկ., *ա*): Մ. ոչ թե ուղղակի իմաստով ուժեղացնում է ձայնը, այլ կենտրոնացնում է այն հարկավոր ուղղությամբ: Ձայնի զգալի ուժեղացում ստանալու համար օգտվում են է լ ե կ տ ր ա մ ե գ ա ֆ ո ն ի ց, որը բաղկացած է միկրոֆոնից, ոչ մեծ բարձրախոսից և ուժեղացուցիչից (նկ., *բ*): Միկրոֆոնը և բարձրախոսը պահվում են խոսողի բերանի մոտ, իսկ ուժեղացուցիչը սնման մարտկոցով հագցվում է գոտուն:



*ա*—սովորական մեգաֆոն, *բ*—էլեկտրամեգաֆոն. *1*. միկրոֆոն, 2. բարձրախոսի գլխիկ, *3*. խոսափող, *4*. ուժեղացուցիչ՝ սնման մարտկոցով

**ՄԵԳՀԱՎԱՅԱ**, նահանգ (1970-ից) Հնդկաստանի հյուսիս-արևելքում: Տարածությունը 22 հզ. *կմ²* է, բնակչությունը՝ 1100 հզ. (1978), վարչական կենտրոնը՝ Շիլոնգ: Ռելիեֆում տիրապետում են բլուրները և ցածր լեռները: Կլիման արևադարձային է, մուսսոնային: Տարեկան տեղումները տեղ-տեղ անցնում են 10000 *մմ*-ից: Տարածված են արևադարձային անտառները և մացառուտային թփուտները: Առավելապես ագրարային, հետամնաց տնտեսությամբ նահանգ է: Մշակում են բրինձ, եգիպտացորեն, կորեկ, կարտոֆիլ, նարինջ: Կա շերամապահություն, փայտամթերում, ածխի արդյունահանություն:

**ՄԵԳՐԵԼԱԿԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆ 1857**, վրաց գյուղացիության հակաճորտատիրական ապստամբություն: Սկսվել է 1856-ի վերջին, գյուղական դարբին Ուտու Միղավայի գլխավորությամբ, տարածվել գրեթե ամբողջ Մեգրելիայում: Ապստամբները գրավել են մի քանի գյուղեր, 1857-ի մայիսի 12-ին՝ Մեգրելական իշխանության կենտրոն Զուգդիդին: Հրաժարվել են կատարել ֆեոդալական պարհակներ, կազմակերպել են նոր վարչություն, սկսել են դատեր վարել, սահմանել են առաջին անհրաժեշտության ապրանքների գները ևն: Չնայած գյուղացիների քաջարի դիմադրությանը, ցարական զորքերը և տեղական կալվածատերերի ջոկատները ճնշել են Մ. ա., որի 38 ղեկավարներ աքսորվել են Ռուսաստանի հեռավոր շրջանները:

**ՄԵԳՐԵԼԵՐԵՆ**, մ ի ն գ ր ե լ ե ր ե ն, ի բ ե ր ե ր ե ն, *մեգրելների* լեզուն: Պատկանում է իբերա-կովկասյան լեզվաընտանիքի քարթվելական խմբին: Գիր չունի (մեգրելների գրական լեզուն վրացերենն է): Խոսվում է Ռիոն գետի աջափնյա շրջաններում, Ինգուրի ու մերձակա գետերի ավազաններում և Վրաց. ՍՍՀ այլ վայրերում: Ներկայանում է զուգդիդի-սամուրզականյան և սենակյան բարբառներով: Ունի 5 ձայնավոր և 28 բաղաձայն հնչույթ (ներառյալ բարբառային տարբերակները): Շեշտը թույլ է: Ձևաբանության մեջ գերիշխում են համադրական կառուցվածները: Հոլովները 9 են, այդ թվում՝ էրգատիվ, տրանսֆորմատիվ, մեկնման, նախատեսական ևն: Հարուստ է բայական ձևերով: Կան բազմաթիվ եղանակա-ժամանակային ձևեր:

*Գրկ.* К и з и р и а А. И., Занский язык, в кн.: Языки народов СССР, т. 4, М., 1967.

*Հ. Պետրոսյան*

**ՄԵԳՐԵԼԻԱ**, պատմական մարզ Արևմտյան Վրաստանում: Ներառել է Ցխենիսծղալի գետից մինչև Էնգուրի (Ինգուրի) գետի տարածքը: Բնակիչները՝ *մեգրելներ* (վրաց. ազգագրական խումբ): XVI—XIX դդ. ինքնուրույն ֆեոդալական իշխանություն էր:

**ՄԵԳՐԵԼՆԵՐ**, մ ե ն գ ր ե լ ն ե ր, մ ի ն գ ր ե լ ն ե ր, *վրացիներ*, որոնք անցյալում զբաղեցնում էին հին Կոլխիդայի կենտրոնական և նախալեռնային շրջանները: Այժմ բնակվում են Ռիոն գետի աջափնյա շրջաններում, Խոբի, Ինգուրի և այլ գետերի ավազաններում, Աբխազիայում և ՎՍՍՀ այլ շրջաններում: Խոսում են վրացերեն, կենցաղում՝ նաև *մեգրելերեն*: Դեռևս ոչ վաղ անցյալում Մ-ի մեջ պահպանվում էին կենցաղի և մշակույթի որոշ առանձնահատկություններ:

**ՄԵԴԱԼ** (ֆրանս. medaille, < իտալ. medaglia, < լատ. metallum — մետաղ), նշանավոր գործիչների կամ իրադարձությունների նվիրված մետաղյա, երկու, երբեմն՝ մեկ երեսանի պատկերազարդ նշան: Հիմնականում լինում են կլոր կամ ձվաձիր, երբեմն՝ բազմանկյուն (պլակետկա): Առաջին անգամ թողարկվել են Իտալիայում, XIV դ., ապա նաև ուրիշ երկրներում, սկզբնապես՝ ոչ միայն պետության, այլև առանձին անձանց, ընկերությունների կողմից: Սակայն XVII—XVIII դդ., որպես կանոն, Մ-ի թողարկման իրավունքը վերապահվում է միայն պետությանը: Մ. որպես պարգև առաջին անգամ սահմանել է շվեդ. Գուստավ Ադոլֆ թագավորը (XVII դ.) սպաներին պարգևատրելու համար: XVIII դ. վերջին պարգևային Մ-ներ մտցվեցին Լեհաստանում, Ֆրանսիայում և Պրուսիայում, Սոֆիա թագուհու կառավարման տարիներին (1682—89)՝ Ռուսաստանում: Առաջին հայատառ Մ-ները երեվան են եկել XVII դ.: Այնուհետև հայկ. գրություններով Մ-ներ են պատրաստվել XVIII դ., Հոլանդիայում: XVII—XIX դդ. հայկ. Մ-ները պատրաստվում էին ոսկերիչների արհեստանոցներում՝ մասնավոր պատվերներով: XIX դ. 20-ական թվականներից սկսած՝ պարբերաբար Մ-ներ են թողարկվում Վենետիկի ու Վիեննայի Մխիթարյան միաբանությունների նախաձեռնությամբ:

Մ. սկզբում տրվում էր զինվորական, հետագայում՝ նաև քաղաքացիական ծառայությունների համար: Այժմյան բուրժ. պետությունների մեծ մասում Մ-ներ տրվում են հիմնականում զինվորական ծառայությունների համար: Մ-ներով պարգևատրվում են նաև գիտության, մշակույթի, տնտեսության, սպորտի և այլ ասպարեզներում ունեցած նվաճումների համար: Մ-ներ են տրվում լենինյան մրցանակի, միջազգային մրցույթների, նոբելյան մրցանակի դափնեկիրներին, օլիմպիական խաղերի, սպորտային մրցությունների հաղթողներին ևն: Շատ երկրներում գոյություն ունեն Մ-ներ գյուղատնտեսության և արդյունաբերության (Իտալիա, Ֆրանսիա, Ռուսաստան), գրականության ու արվեստի (Ավստրիա, Բելգիա, Ֆրանսիա, Գերմանիա) բնագավառներում ունեցած նվաճումների համար:

ՍՍՀՄ-ում Մ-ներ են հիմնադրված ժող. տնտ. բնագավառում ձեռք բերած նվաճումների համար («Ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդես»-ի ոսկե, արծաթե և բրոնզե Մ-ներ): Մի շարք Մ-ներով (Կ. Մարքսի, Մ. Լոմոնոսովի, Ի. Պավլովի, Դ. Պրյանիշնիկովի, Ա. Պոպովի անվ. ևն) պարգևատրում է ՍՍՀՄ ԳԱ (Մ. Լոմոնոսովի անվ. ոսկյա Մ. 1971-ին հանձնվեց ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանին): ՌՍՖՍՀ պետ. մրցանակի դափնեկիրներին, աչքի ընկնող գեղարվեստական ստեղծագործությունների կամ կատարողական վարպետության համար, տրվում են Մ. Գորկու, Ի. Ռեպինի, Կ. Ստանիսլավսկու, Մ. Գլինկայի և Վասիլև եղբայրների դիմաքանդակներով Մ-ներ: 1972-ին ՍՍՀՄ ավիացիոն սպորտի ֆեդերացիան հիմնեց ակադեմիկոս Ս. Պ. Կորոլյովի անվ. Մ.: ՀՍՍՀ-ում թողարկված Մ-ներն արտացոլում են հանրապետությունում տեղի ունեցած վերափոխումներն ու նվաճումները, ինչպես և նշանավոր գործիչների հոբելյանները;

Մ-ներ են տրվում Սովետական Հայաստանի պետ. և Հայաստանի լենինյան կոմերիտմիության մրցանակների դափնեկիրներին: ՀՍՍՀ ԳԱ, Մեսրոպ Մաշտոցի ծննդյան 1600-ամյակի առթիվ, հինգ տարին մեկ կազմակերպում է Մեսրոպ Մաշտոցի անվ. մրցանակաբաշխություն՝ հայագիտական լավագույն աշխատության համար: Մրցանակը շահողին տրվում է նաև Մ. (առաջինն ստացել է ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Լ. Ս. Խաչիկյանը): 1972-ին ՀՍՍՀ ԳԱ, հայ ճարտարապետության ուսումնասիրման գործում ավանդ ունեցող հեղինակների համար, սահմանեց «Թորոս Թորամանյանի հուշանշան»: Մրցանակը հաղթողներին հանձնվում է Ջվարթնոցում՝ չորս տարին մեկ (առաջինն ստացել է Ն. Մ. Տոկարսկին): ՀՍՍՀ ԳԱ սահմանել է Ս. Շահումյանի ծննդյան 100-ամյակի առթիվ (ստացել են Գ. Բ. Ղարիբջանյանը և Խ. Հ. Բարսեղյանը), ՍՍՀՄ գրողների միության հայկ. բաժանմունքը՝ Ե. Չարենցի անվ. Մ.: Մ., որպես պետ. պարգև, տես *Մեդալներ ՍՍՀՄ* հոդվածում: *Հ. Սարգսյան*

**ՄԵԴԱԼԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ**, մեդալային արվեստ, դրամների և մեդալների պատրաստման արվեստ, *գլիպտիկային* մոտ մանր պլաստիկայի առանձնահատուկ բնագավառ: Դրամների և մեդալների պատրաստման նյութ են ծառայում մետաղները (պղինձ, արծաթ, ոսկի ևն), որոնց վրա հնարավոր է փորագրել հորինվածքով մանր, բայց մնայուն պատկերներ: Մ. սկզբնավորվել է Լիդիայում և Հին Հունաստանում, դրամի երևան գալու հետ մեկտեղ (մ. թ. ա. VIII—VII դդ. սահմանագիծ): Մ-յան զարգացումը ենթարկվել է պլաստիկ արվեստների հիմնական օրինաչափություններին (տես *Քանդակագործություն*): Մ-յանը հատկանշական են պատկերագրական տիպերի և կոմպոզիցիոն հնարքների կայունությունը, պարզ ու լակոնիկ պլաստիկական լուծումները, խորհրդանշանների, խորհրդապատկերների, այլաբանության լայն կիրառումը (Մ-յան իրավական, տնտ. և սոցիալ-պատմական նշանակության մասին տես *Դրամ*, *Մեդալ*, *Դրամագիտություն* հոդվածները): Դրամները հնում պատրաստել են դրվագման եղանակով, երկու դրոշմակի օգնությամբ, որոնց ոչ խոր փոսիկների մեջ նեգատիվային պատկերմամբ փորագրվել են դրամի երկու երեսները: Դրամների դրոշմակներ գրեթե չեն պահպանվել, մաշվելուց հետո դրանք անմիջապես ոչնչացվել են: Հայաստանի պատմության պետ. թանգարանում պահպանվել է Կիլիկիայի Հայկական թագավորության XIII դ. դրամի դրոշմակ, որը հայկ. դրամագործության միակ նմուշն է: Մեծ չափերի դրամներ ձուլելիս հազվադեպ կիրառվել են կավե և գիպսե կաղապարներ (մ. թ. ա. V—IV դդ. իտալ. դրամները): Հին Հունաստանում դրամները (մ. թ. ա. VII—VI դդ.), որոնք փոքր էին ու մի երեսով, պատրաստվել են էլեկտրից ու արծաթից: Դասական շրջանում (մ. թ. ա. V—IV դդ.) դրամների չափերը մեծացել են, նրանց երեսներին պատկերվել են աստվածների կիսադեմեր, դիցաբանական թեմաներով բազմաֆիգուր կոմպոզիցիաներ: Մ. թ. ա. V դ. վերջին Սիրակուզայում աստվածների գլուխների դիմահայաց և երեք-քառորդ դիրքով դրամներ են հատվել: Մ. թ. ա. V—IV դդ. Մ-յան գլուխգործոցներ են Սիցիլիայի և Մեծ Հունաստանի դրամները (հաճախ փորագրիչների անուններով՝ Կիմոն, Եվենետ, Թեոդոտոս): Հելլենիստական շրջանում (մ. թ. ա. IV—I դդ.) դրամների վրա առաջին անգամ պատկերվել են տիրակալների դիմապատկերներ, մակագրությամբ շրջանակված աստվածների ֆիգուրներ: Իդեալականացված դիմապատկերների հետ միաժամանակ (Ալեքսանդր Մակեդոնացու դրամները) հանդիպում են նաև ռեալիստական դիմապատկերներ (պոնտական և Բակտրիայի դրամները): Պարթևական և սասանյան դրամները (մ. թ. ա. II դ.—մ. թ. VII դ.) ոճավորված էին: Հին հռոմեական ձուլածո պղնձյա մեծ դրամները (մ. թ. ա. III դ.) փոխարկվել են արծաթյա դրվագված դինարներով: Ավելի ուշ հռոմեական դրամների վրա աստվածների պատկերների հետ երևան են եկել դիցաբանական տեսարաններ, արձանների և տաճարների պատկերներ: Միապետության շրջանում (մ. թ. I—V դդ.) տարածվել են ոսկեդրամներ, որոնց վրա պատկերված հարթաքանդակները իրենց գեղարվեստական հատկանիշներով չեն զիջել կլոր քանդակներին: Բյուզանդական դրամներին բնորոշ է դիմապատկերների պարզեցումը: IX—XII դդ. տարածում են գտել արծաթյա մանրադրամները (*դինար*): XII դ. Չեխիայի դրամները աչքի են ընկնում կատարման մանրակրկիտությամբ և նրբագեղությամբ: Մոտ 1231-ին հռոմեական դրամների նմանակմամբ դրըվագվել են Ֆրիդրիխ II Գոգենշտաուֆենի ոսկյա «օգոստոսներ»-ը: VII—VIII դդ. սկսվել են դրվագվել արաբ. դրամներ՝ առանց դիմաքանդակների և կոմպոզիցիոն պատկերների: Մ. թ. ա. VIII դ. Չինաստանում տարածված են եղել բրիչի, դանակի, բանալու ձևով մետաղաձույլ դրամներ, իսկ միջին դարերում՝ հիերոգլիֆային մակագրություններով կլոր դրամներ: XIV—XV դդ. Իտալիայում առաջ է եկել հուշամեդալը, որը չի ունեցել գնողունակություն: Վերածննդի դարաշրջանի մեդալագործների ստեղծագործություններն արված են անտիկ արվեստի անմիջական ազդեցությամբ, որոնք դիմապատկերային արվեստի հուշարձաններ են: XV դ. իտալ. մեդալագործներից հայտնի են Պիզանելլոն, Մատդեո դե Պաստին, Նիկոլո Ֆյորենտինոն, Բ. Չելլինին և ուրիշներ: XVI դ. գերմ. մեդալները թագավորների, դքսերի, եպիսկոպոսների դիմապատկերների մի յուրահատուկ թանգարան են ներկայացնում: XVI—XVIII դդ. Արևմտյան Եվրոպայում թալերը (արծաթյա մեծ դրամ) դարձել է գերակշռող դրամ: XVII—XVIII դդ. դրամներն իրենց տեսքով նմանվում են մեդալներին: Քանի որ մեդալներն իբրև դրամ չեն օգտագործվել, մեդալագործները ազատորեն փոխել են նրանց չափերը (60—80 *մմ*) և ձևերը:

XVII դ. հայտնագործվել է հզոր պտուտակավոր մամլիչը: Կնիքներ են պատրաստվել պողպատից: Մեդալային արվեստի զարգացմանը նպաստել է կենցաղային բնույթի մեդալների՝ իբրև զարդ կրելու սովորույթը: XVII դ. մասնավոր անհատների պատվերներով ստեղծված մեդալների հետ եվրոպական երկրների դրամահատարաններում թողարկվել են պետ. պատվերներով մեդալներ: Այս իմաստով Ֆրանսիան առաջինն էր, որ սկիզբ դրեց մեդալների պաշտոնական թողարկումներին (Լյուդովիկոս XIV-ին նվիրված մոտ 300 մեդալները): XVIII դ. Եվրոպայում մեդալների թողարկումը միապետների իրավասության տակ է գտնվել:

Ռուս. Մ. ձևավորվել է Կիևյան Ռուսիայում (X դ.)՝ դրամի երևան գալով: XVII—XVIII դդ. ստեղծել են առաջին ռուս. մեդալները: Ռուս մեդալագործներ Ս. Յու. Յուդինը, Տ. Ի. Իվանովը, Կ. Ա. Լեբերեխտը և ուրիշներ ստեղծել են մի շարք հիշարժան մեդալային ստեղծագործություններ:

XIX դ. սկզբի մեդալներին բնորոշ է գեղարվեստական արտահայտչականության պարզությունը: Մեդալային արվեստի վարպետները ժամանակի գեղարվեստական ազդեցությամբ ստեղծել են ինքնատիպ հորինվածքներ: Դրանցից են Բ. Անդրիյոն, Ն. Բրեննե (Ֆրանսիա), Բ. Բիստրուչչին (Անգլիա), Հ. Քրիստենսենը (Դանիա): XIX—XX դդ. սահմանագլխին Ժ. Շապլենը, Օ. Ռոտին (Ֆրանսիա), Ա. Շարֆը (Ավստրիա) իմպրեսիոնիզմի ազդեցությամբ դիմել են լուսաստվերային էֆեկտների: Ուժեղացել են պլաստիկական էքսպերիմենտները: Մեդալագործ վարպետները դիմել են մակերեսի մշակման և գեղանկարչական հնարքների, խորագծի, արծնապատման և սևադման տեխնիկային, անհամաչափ կոմպոզիցիայի դինամիկությանը: Մ-յան մեջ են ներթափանցել *կուբիզմի* և *էքսպրեսիոնիզմի* հնարքները: Տեխ. առաջընթացը նպաստել է մեդալային արվեստի զարգացմանը: Բազմազան են դարձել մեդալների ձևերը, մշակման եղանակները, նյութերի օգտագործումը ևն:

Սովետական մեդալային արվեստը անցել է դժվարին որոնումների ճանապարհ: Սովետական մեդալները պարզ և հասկանալի լեզվով սերունդներին են հանձնում մեր դարաշրջանի մեծ վերափոխումները՝ ստեղծելով Սովետական Միության յուրօրինակ տարեգրությունը: 1920—30-ական թթ. սովետական մեդալագործները ձգտել են վերածնել Մ-յան արվեստը: Ստեղծվել են Հոկտեմբերյան հեղափոխությանը, 1918—20-ի քաղաքացիական կռիվներին, 1941—45-ի Հայրենական մեծ պատերազմին նվիրված մեդալներ: 1950-ական թթ. սկսած կանոնավորապես բաց են թողնվել հուշամեդալներ: 1955-ին ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրությանը կից ստեղծվել է հուշային և հոբելյանական մեդալների գեղարվեստական խորհուրդ: 1971-ին տեղի է ունեցել Մ-յան համամիութենական I ցուցահանդեսը, ուր ցուցադրվել են ՍՄԿԿ-ին և սովետական պետությանը, տիեզերքի յուրացմանը, կուսակցության և պետ., մշակույթի, գիտության գործիչներին նվիրված բազմաբնույթ և բազմաձև մեդալներ:

Հին հայկ. դրամները թողարկվել են մ. թ. ա. III—II դդ., Ծոփքի թագավորու-

թյունում, որոնց առաջին երեսին դրվագվել է տիրակալի դիմաքանդակը: Պահպանվել են այդ դրամների պղնձյա օրինակների եզակի նմուշներ: Հայաստանի հելլենիստական ժամանակաշրջանի պատկերագրության նմուշներ են Արտաշեսյանների հարստության, հատկապես Տիգրան II-ի և Արտավազդ II-ի դրամները, որոնց դիմապատկերները ռեալիստական մանրաքանդակներ են: Նրանց բնորոշ են ներպարի անհատականության բացահայտումը, դիմագծերի նրբին մշակումը: Միջին դարերում հայկ. դրամագործությունը ծաղկում է ապրել Կիլիկիայի հայկական պետությունում: Կիլիկյան դրամները բնորոշվում են ռելիեֆի ցածրությամբ, պատկերների պարզությամբ: Պեղումներից հայտնաբերված (Սիսիան, Կամո, Արմավիր) ոսկյա, արծաթյա հայկ. մեդալիոնները (մ. թ. ա. II—մ. թ. I դդ.) մեդալային արվեստի եզակի նմուշներ են: Նրանց վրա պատկերված են աստվածությունների (Նիկե, Աթենաս-Պալլաս), կենդանիների (արծիվ) ոչ ուռուցիկ պատկերներ:

Հայկ. առաջին մեդալները ստեղծվել են XVII դ. 2-րդ կեսին: Մի շարք մեդալներ պատրաստվել են Հոլանդիայի հայկ. գաղթօջախում (XVIII դ.): XVII—XIX դդ. ինչպես բուն Հայաստանում, այնպես էլ հայկ. գաղթօջախներում, մեդալներ են ստեղծվել ոսկերիչների մասնավոր արհեստանոցներում: Ավելի քան 150 տարի է մեդալներ են թողարկում Վենետիկի և Վիեննայի Մխիթարյան միաբանությունները: Մասսայական թողարկմամբ առաջին մեդալը ստեղծվել է 1960-ին՝ նվիրված Հայաստանում սովետական կարգերի հաստատման 40-ամյակին (հեղինակներ՝ Ա. Սարգսյան և Հ. Պողոսյան): Մեդալներ են թողարկվել ՍՍՀՄ 50-ամյակի (1967) և Երևանի հիմնադրման 2750-ամյակի (1968) առթիվ: Հիշատակային մեդալներ են թողարկվել Հ. Թումանյանի, Կոմիտասի, Ա. Սպենդիարյանի, Գ. Սունդուկյանի, Ե. Չարենցի, Ս. Շահումյանի, Դավիթ Անհաղթի և այլոց հոբելյանների առթիվ: Մեդալներ են ստեղծվել Հայկական ՍՍՀ 50-ամյակի, ՀԼԿԵՄ կազմակերպության 50-ամյակի, ինչպես նաև մի շարք ուս. հաստատությունների, արդ. ձեռնարկությունների և այլ հոբելյանների ու տարեդարձների կապակցությամբ: Հիշատակային մեդալներ են թողարկվել՝ նվիրված առանձին պատմական հուշարձաններին (Սանահին, Կեչառիս, Էջմիածին, Հաղպատ, Զվարթնոց ևն): Սովետական Հայաստանում հիշատակային մեդալների թողարկումը ստացել է պարբերական բնույթ: Նույն տիպի մեդալներ են թողարկվում նաև արտասահմանյան երկրների հայաշատ կենտրոններում (ԱՄՆ, Սիրիայի Արաբական Հանրապետություն, Լիբանան, Եգիպտոս ևն):

Պատկերազարդումը տես 344—345-րդ էջերի միջև՝ ներդիրում:

*Գրկ.* Սարգսյան Հ. Վ., Հայկական հարսանեկան մեդալներ, «ԼՀԳ», 1974, № 7: Սարգսյան Հ., Մխիթար Աբբահոր դիմապատկերով հիշատակային մեդալներ, «ՀԱ», 1976, 1—12: Щукина Е. С., Медальерное искусство в России 18 века, Л., 1962; Hill G. F. A Corpus of Italian Medals of the Renaissance before Cellini, v. 1—2, L., 1930.

*Հ. Սարգսյան*

**ՄԵԴԱԼԻՈՆ** (ֆրանս. médaillon, < իտալ. medaglione, < medaglia — մեդալ), 1. կերպարային կամ զարդապատկերային հորինվածք (ծեփածո կամ փորագիր ռելիեֆ, զարդանախշ, խճանկար) շրջանաձև կամ ձվաձև շրջանակի մեջ: Կիրառվում է շենքերի, կահույքի և այլնի հարդարման համար: 2. Ոսկերչական զարդ (շրջանաձև կամ ձվաձև տուփիկի տեսքով, հաճախ շղթայով) մանրապատկեր կամ մասունք պահելու համար: Կրում են պարանոցին: 3. Հարթապատկերով (սովորաբար դիմապատկեր) ոչ մեծ չափի շրջանաձև կամ ձվաձև վահանիկ: Հիմնականում պատրաստվում է մետաղից, ձուլման կամ դրվագման տեխնիկայով:

**ՄԵԴԱԼՆԵՐ ՍՍՀՄ**, հատուկ ծառայության համար պետական պարգև (ՍՍՀՄ շքանշանների և պատվավոր կոչումների հետ): ՍՍՀՄ սահմանադրությամբ Մ. սահմանելու և պարգևելու իրավունքը պատկանում է ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահությանը: Պարգևատրման ընդհանուր կարգը որոշվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության 1958-ի փետր. 11-ի «ՍՍՀՄ շքանշաններով և մեդալներով պարգևատրելու կարգի մասին» հրամանագրով: ՍՍՀՄ-ում (առ 1-ը մայիսի 1980-ը) սահմանված է 51 Մ.: Ըստ կրելու սահմանված կարգի Մ. հետևյալն են՝ «Ոսկե աստղ»՝ *Սովետական Միության հերոսի* պատվանշան, «Մուրճ և մանգաղ»՝ *սոցիալիստական աշխատանքի հերոսի* պատվանշան, «Խիզախության համար» (1938-ի հոկտ. 17), Ուշակովի մեդալ (1944-ի մարտի 3), «Մարտական ծառայության համար» (1938-ի հոկտ. 17), «ՍՍՀՄ պետական սահմանի պահպանման համար» [1950-ի հուլիսի 3 (պարգևատրելու իրավունքը պատկանում է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի անվտանգության պետ. կոմիտեի նախագահին)], «Հասարակական կարգի պահպանման գերազանց ծառայության համար» (1950-ի նոյեմբ. 1), Նախիմովի մեդալ (1944-ի մարտի 3), «Բանվորա-գյուղացիական Կարմիր բանակի XX տարին» (1938-ի հունվ. 24), «Աշխատանքային արիության համար» (1938-ի դեկտ. 27), «Աշխատանքային գերազանցության համար» (1938-ի դեկտ. 27), «Աշխատանքային արիության համար (Մարտական արիության համար) ի նշանավորումն Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի» (1969-ի նոյեմբ. 5), «Հրդեհի ժամանակ խիզախության համար» (1957-ի հոկտ. 31), «Խեղդվողներին փրկելու համար» (1957-ի փետր. 16), «Հայրենական պատերազմի պարտիզանին» I և II աստիճանի (1943-ի փետր. 2), «Լենինգրադի պաշտպանության համար» (1942-ի դեկտ. 22), «Մոսկվայի պաշտպանության համար» (1944-ի մայիսի 1), «Օդեսայի պաշտպանության համար» (1942-ի դեկտ. 22), «Սևաստոպոլի պաշտպանության համար» (1942-ի դեկտ. 22), «Ստալինգրադի պաշտպանության համար» (1942-ի դեկտ. 22), «Կիևի պաշտպանության համար» (1961-ի հունիսի 21), «Կովկասի պաշտպանության համար» (1944-ի մայիսի 1), «Սովետական Անդրբևեռի պաշտպանության համար» (1944-ի դեկտ. 5), «Հայրենական մեծ պատերազմում Գերմանիայի դեմ հաղթանակի համար 1941—45 թթ.» (1945-ի մայիսի 9), «Ճապոնիայի դեմ հաղթանակի համար» (1945-ի սեպտ. 30), «Բուդապեշտի գրավման համար» (1945-ի հունիսի 9), «Քյոնիգսբերգի գրավման համար» (1945-ի հունիսի 9), «Վիեննայի գրավման համար» (1945-ի հունիսի 9), «Բեռլինի գրավման համար» (1945-ի հունիսի 9), «Բելգրադի ազատագրման համար» (1945-ի հունիսի 9), «Վարշավայի ազատագրման համար» (1945-ի հունիսի 9), «Պրագայի ազատագրման համար» (1945-ի հունիսի 9), «Հայրենական մեծ պատերազմի ժամանակ 1941—1945 թթ. աշխատանքային արիության համար» (1945-ի հունիսի 6), «1941—45 թթ. Հայրենական մեծ պատերազմում հաղթանակի 20 տարին» (1965-ի մայիսի 7), «Հարավի սև մետալուրգիայի ձեռնարկությունների վերականգնման համար» (1948-ի մայիսի 18), «Դոնբասի ածխահանքերի վերականգնման համար» (1947-ի սեպտ. 10), «Խոպան հողերի յուրացման համար» (1956-ի հոկտ. 20), «Մոսկվայի 800-ամյակի առթիվ» (1947-ի սեպտ. 20), «Լենինգրադի 250-ամյակի առթիվ» (1957-ի մայիսի 16), «Սովետական բանակի և նավատորմի 30 տարին» (1948-ի փետր. 22), «ՍՍՀՄ զինված ուժերի 40 տարին» (1957-ի դեկտ. 18), «ՍՍՀՄ զինված ուժերի 50 տարին» (1967-ի դեկտ. 26), «Սովետական միլիցիայի 50 տարին» (1967-ի նոյեմբ. 20), «Մայրության մեդալ» I և II աստիճանների (1944-ի հուլիսի 8), «Աշխատանքի վետերան» (1974-ի հունվ. 18), «Մարտական ծառայության համար» I և II աստիճանների (1974-ի հոկտ. 28), «1941—45 թթ. Հայրենական պատերազմում հաղթանակի 30 տարին» (1975-ի ապրիլի 25), «ՍՍՀՄ զինված ուժերի վետերան» (1975-ի մայիսի 20), «Բայկալ-Ամուրյան մայրուղու շինարարության համար» (1976-ի հոկտ. 8), «ՌՍՖՍՀ ոչ սևահողային շրջանների վերափոխության համար» (1977-ի սեպտ. 30), «ՍՍՀՄ զինված ուժերի 60 տարին» (1978-ի հունվ. 28): ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության լիազորությամբ և նրա անունից Մ-ով պարգևատրումը կատարվում է միութենական և ինքնավար հանրապետությունների Գերագույն սովետների Նախագահության, աշխատավորների դեպուտատների, երկրամասային, մարզային, քաղաքային գործադիր կոմիտեների կողմից: Մ. կրում են կրծքի ձախ կողմում, շքանշաններից հետո, իսկ «Ոսկե աստղ» և «Մուրճ ու մանգաղ» Մ. բոլոր շքանշաններից և Մ-ներից վերև: Մ-ի փոխարեն կարելի է կրել նրան համապատասխան գույնի ժապավենը:

Պատկերազարդումը տես 8-րդ հատորի *Շքանշաններ* հոդվածի պատկերազարդման հետ:

**ՄԵԴԱՆ** (Medan), քաղաք Ինդոնեզիայում: Հյուսիսային Սումատրա նահանգի վարչական կենտրոնն է: 479 հզ. բն. (1978): Երկաթուղային և ավտոճանապարհների հանգույց է: Կա սննդիմի, տեքստիլ, ռետինի, մետաղամշակման, փայտամշակման արդյունաբերություն, շրջակայքում՝

արմավի յուղի արտադրություն և կաուչուկի մշակում: Ունի համալսարան:

**ՄԵԴԵԱ** (Μήδεια), կախարդուհի հունական դիցարանում, Կողքիսի Էյետոս արքայի դուստրը և Հելիոսի թոռը: Սիրահարվելով արգոնավորդների առաջնորդ *Յասոնին*, Մ. օգնել է նրան՝ հափշտակելու *ոսկե գեղմը*: Յասոնի հետ փախչելով Հունաստան՝ ճանապարհին մի շարք ծառայություններ է մատուցել արգոնավորդներին (մեկնելուց առաջ սպանել է եղբորը՝ Ապսիրտոսին, որպեսզի զայրացած հայրը զբաղվեր նրա թաղման արարողությամբ և չհետապնդեր արգոնավորդներին, կախարդանքներով ոչնչացրել է Կրետեի հսկային ևն): Յոլկոս քաղաքում խաբեությամբ սպանելով Յասոնի թշնամի Պելիասին՝ Մ. Յասոնի հետ բնակվել է Կորնթոսում: Երբ Յասոնը ցանկացել է կնության առնել Կորնթոսի արքայադստերը, Մ. թունավորված զգեստով կործանել է մրցակցուհուն, սպանել Յասոնից սերած իր զավակներին և անհետացել թևավոր վիշապներով լծված կառքով, որ նրան ուղարկել էր պապը՝ Հելիոսը: Մ-ի մասին ստեղծվել են նաև այլ զրույցներ: Մ-ի կերպարը գեղարվեստական մշակման է ենթարկվել գրականության (Եվրիպիդես, Ապոլոնիոս Հռոդոսացի, Սենեկա, Պ. Կոռնել և ուրիշներ), գեղանկարչության (Պոմպեյի որմնանկարներ, Է. Դելակրուա), երաժշտության (Լ. Կերուբինի, Է. Կշենեկ) մեջ:

Գրկ. Կուն Ն., Հին Հունաստանի լեգենդներն ու առասպելները, Ե., 1979:

**ՄԵԴԵԼԻՆ** (Medellin), քաղաք Կոլումբիայում, Անտոկիա դեպարտամենտի վարչական կենտրոնը: 1200 հզ. բն. (1976): Գտնվում է Պորսե գետի հովտում (Կենտրոնական Կորդիլիերաներ), 1474 *մ* բարձրության վրա: Մշակող (հիմնականում՝ տեքստիլ) արդյունաբերության հնագույն կենտրոն է: Կա սննդի արդյունաբերության և ցեմենտի արտադրություն: Մ-ի մոտ արդյունահանվում է ոսկի և արծաթ: Ունի համալսարան: Հիմնադրվել է 1675-ին:

**ՄԵԴԻԱ**, հնագույն երկիր Իրանական բարձրավանդակում (տես *Մարաստան*):

**ՄԵԴԻԱՆՏ** (< լատ. medians — կիսող), մաժոր և մինոր լադերում գլխավոր աստիճանների՝ տոնիկայի ու դոմինանտի և տոնիկայի ու ստորին սուբդոմինանտի կվինտային տարածությունները «կիսող» III և VI աստիճանները և նրանց վրա կառուցվող եռահնչյունները: Նշվում է M տառով: Մ-ները լադի երանգը բնորոշող կարևոր աստիճաններ են: Մ-ային եռահնչյունները ֆունկցիոնալ առումով գլխավոր եռահնչյունների հարմոնիայից բխող երկակի բնույթ ունեն:

**ՄԵԴԻԱՏՈՐՆԵՐ** (< լատ. mediator — միջնորդ), միջնորդանյութեր, քիմիական նյութեր, որոնց մոլեկուլները փոխազդում են բջջային թաղանթի հատուկ ռեցեպտորների հետ և, փոխելով որոշակի իոնների թափանցելիությունը, թաղանթում առաջացնում գործողության պոտենցիալ: Առաջանում են նյարդային դրդման ազդեցությամբ և մասնակցում դրանց հաղորդմանը նյարդային վերջույթից աշխատող օրգանին և նյարդային մեկ բջջից մյուսին: Մ. հայտնաբերել է O. Լյովին, սրտի կենտրոնախույս նյարդային վերջույթներում (1921): Մ-ից են՝ *ացետիլխոլինը*, նորադրենալինը, դոֆամինը, սերոտոնինը, γ-ամինակարագաթթուն ևն: Էլեկտրոնային մանրադիտակով կատարված հետազոտություններով պարզվել է, որ ինչպես կենտրոնական նյարդային վերջույթներում, այնպես էլ ծայրամասային նյարդային սինապսներում կան մինչև 300 Å տրամագծով, ացետիլխոլին պարունակող մեծ թվով բշտիկներ: Նյարդային դրդման պրոցեսում բշտիկների մի մասը պայթում է, պարունակությունը լցվում է սինապսային ճեղքը և փոխազդում ետսինապսային թաղանթի ացետիլխոլինի նկատմամբ զգայուն մասերի՝ խոլինոռեցեպտորների հետ: Դրանից խիստ բարձրանում է թաղանթի թափանցելիությունը. $K^+$ իոնները բջջից դուրս են գալիս և տեղադրվում մակերեսին, իսկ $Na^+$ թափանցում է ներս: Բջջի ներսում փոքրանում է բացասական էլեկտրական լիցքը, բջջաթաղանթը ապաբևեռանում է, որը հանգեցնում է դրդող ետսինապսային պոտենցիալի առաջացմանը: Երբ նրա մեծությունը հասնում է շեմքայինի, առաջանում է դրդման էլեկտրական ազդակ (տես *Կենսաէլեկտրական պոտենցիալներ*): Առավել ուսումնասիրված և լայնորեն կիրառվող Մ. են ացետիլխոլինը և ադրենալինը: Դրան համապատասխան օրգաններին դրդում հաղորդող նյարդային վերջույթները (տես *Վեգետատիվ նյարդային համակարգ*) բաժանվում են խոլիներգիկ և ադրեներգիկ թելիկների: Մ-ի ազդեցությունը չի սահմանափակվում տեղական ռեակցիաների առաջացմամբ, դրանք մասնակցում են նաև նյարդահումորալ կարգավորման պրոցեսներին: Մ-ի մասին ուսմունքը կարևոր դեր է խաղացել ֆիզիոլոգիայի, նյարդախտաբանության, հոգեբանության ևն գիտությունների զարգացման համար:

**ՄԵԴԻՆ**, Մեդինշ, լատիշ կոմպոզիտոր եղբայրներ: Եկաբ Մ. (1885—1971), Լատվ. ՍՍՀ ժող. արտիստ (1960): Ավարտել է Ռիգայի երաժշտական ինստ-ը (1905): 1921—44-ին եղել է Ելգավայի կոնսերվատորիայի դիրեկտոր: 1944-ից խմբավարություն է դասավանդել Լատվ. կոնսերվատորիայում (1945-ից՝ պրոֆեսոր), 1948—51-ին՝ ռեկտոր: Լատվ. ՍՍՀ երգի տոների գլխավոր դիրիժորներից (1948—1970): Խմբերգերի, կանտատների, գործիքային 11 կոնցերտների, 3 լարային կվարտետների, ինչպես նաև «Խմբավարության հիմունքներ» գրքի (1956), ինքնակենսագրության («Ուրվագծեր», 1968) են հեղինակ է: Յազեպ Մ. (1877—1947), Լատվ. ՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1945): 1896-ին ավարտել է Ռիգայի երաժշտական ինստ-ը, ապա՝ նույն ինստ-ի դասատու և ղեկավար: 1906—1911-ին Ռիգայի լատվիական թատրոնի, 1916—22-ին՝ Բաքվի օպերային թատրոնի, 1922—25-ին՝ Լատվ. ազգային օպերայի (Ռիգա) դիրիժոր: 1945—47-ին դասավանդել է (1946-ից՝ պրոֆեսոր) Լատվ. կոնսերվատորիայում (դաշնամուր): Գրել է 2 օպերա, 3 սիմֆոնիա, սիմֆոնիկ պոեմներ «Հայկական մեղեդի», 2 սյուիտ, ջութակի և նվագախմբի կոնցերտ, խմբերգեր: Յանիս Մ. (1890—1966), 1909-ին ավարտել է Ռիգայի երաժշտական ինստ-ը: Եղել է ջութակահար, ապա՝ Լատվ. ռադիոյի սիմֆոնիկ նվագախմբի գլխավոր դիրիժոր: 1921—44-ին դասավանդել է Լատվ. կոնսերվատորիայում (1929-ից՝ պրոֆեսոր): 1944-ից ապրել է արտասահմանում, 1965-ից՝ Ռիգայում: Լատվիական դասական օպերայի (5 օպերա, այդ թվում՝ «Աստվածներ և մարդիկ», 1922) և բալետի («Սիրո հաղթանակը», 1935, «Պողպատե թևեր», 1936) հիմնադիրներից է: Սիմֆոնիկ երկերի հեղինակ է:

**ՄԵԴԻՆԱ** (արաբ. լրիվ անվանումը՝ Մեդինատ—Ռասուլ—Ալլահ կամ Մեդինատան-Նաբի), քաղաք Սաուդյան Արաբիայի հյուսիս-արևմուտքում: Ավտոճանապարհներով կապված է Յանբո, Ջիդդա նավահանգիստների և Մեքքայի հետ: Մոտ 100 հզ. բն. (1975): Զբաղվում են առևտրով, ուխտագնացներին սպասարկելով, պաշտամունքի առարկաների պատրաստումով, արմավենու, բանջարեղենի մշակությամբ: Հնում կոչվել է Յասրիբ (Յաթրիբ), վաղ միջնադարից՝ Մ. (արաբերեն՝ քաղաք): 622-ին իսլամի հիմնադիր Մուհամմեդը Մեքքայից եկել վերաբնակվել է Մ-ում, ստեղծել մահմեդական համայնք: VII դարից Մ. մահմեդական 2-րդ սրբազան քաղաքն է (Մեքքայից հետո): Մ-ում է Մուհամմեդի գերեզմանը: Ունի մեծ մզկիթ:

**ՄԵԴԻՉԻՆԵՐ** (Medici), տոհմ Ֆլորենցիայում: Կարևոր դեր է կատարել միջնադարյան Իտալիայի քաղ., տնտեսական և մշակութային կյանքում: Տոհմի ներկայացուցիչները XV դ. հիմնել են Եվրոպայի խոշորագույն առևտրա-բանկային ընկերություններից մեկը, եղել են Ֆլորենցիայի կառավարողներ (1434—1737, ընդմիջումներով), Հռոմի պապեր, պայքարել են ֆեոդալական ավագանու դեմ (XIV դ.):

Մ-ից նշանավոր են (հիմնական ճյուղի ներկայացուցիչներից) Ջովաննի դի Բիչչի (1360—1429), խոշոր դրամատեր, Կոզիմո Ավագը (1389—1464): Ֆլորենցիայի փաստական կառավարիչը՝ 1434-ից, Լորենցո Սքանչելին (1449—92), կառավարել է 1469-ից, բանաստեղծ և փիլիսոփա, Ջովաննին (1475—1521), 1513-ից՝ Հռոմի պապ (Լևոն X), Եկատերինան (1519—89), դարձել է Ֆրանսիայի թագուհի (Հենրի II-ի կինը), Ջուլիոն (1477/78—1534), 1523-ից՝ Հռոմի պապ (Կղեմես VII), Ալեքսանդրոն (1511—37), Ֆլորենցիայի դուքս՝ 1532-ից. նրա սպանությունից հետո Մ-ի հիմնական ճյուղը վերացել է:

Մ-ի կողմնային ճյուղի գլխավոր ներկայացուցիչներն են. Կոզիմո I (1519—1574), Ֆլորենցիայի դուքս՝ 1537-ից, միավորել է ամբողջ Տոսկանան և 1569-ից կոչվել է Տոսկանայի մեծ դուքս, Կոզիմո II (1590—1621), Տոսկանայի մեծ դուքս՝ 1609-ից, Ջան Գաստոնեն (1671—1737), Տոսկանայի վերջին մեծ դուքսը Մ-ի տոհմից: Մ-ի այս ճյուղին է պատկանել Ֆրանսիայի թագուհի (Հենրի IV-ի կինը) Մարի Մեդիչին (1573—1642, Կոզիմո I-ի թոռը):

**ՄԵԴՆԻԿՅԱՆ** Գրիգոր Հարությունի (26.9.1891, Մոզդոկ — 16.2.1974, Երևան), հայ սովետական դեղաբան: Բժշկ. գիտ. դ-ր (1935), պրոֆեսոր (1935), գիտ. վաստ. գործիչ: 1917-ին ավարտել է Յուրևի (Տարտու) համալսարանի բժշկ. ֆակուլտետի դեղագործության բաժանմունքը, 1930-ին՝ Երևանի համալսարանի բժշկ. ֆակուլտետը: 1919—22-ին աշխատել է Թիֆլիսում: 1922-ից եղել է Երևանի համալսարանի բժշկ. ֆակուլտետի և անասնաբուժական-անասնաբուծական ինստ-ի դեղաբանության, պոլիտեխնիկական ինստ-ի ընդհանուր քիմիայի ամբիոնների վարիչ: 1937—44-ին եղել է Լենինգրադի Ս. Մ. Կիրովի անվ. ռազմաբժշկական ակադեմիայի պրոֆեսոր, 1944—55-ին՝ բժշկ. ստոմատոլոգիական և անասնաբույժների կատարելագործման ինստ-ների դեղագործության ամբիոնների վարիչ: 1955-ից աշխատել է Երևանի հեմատոլոգիայի և արյան փոխներարկման, բժշկ., նուրբ օրգ. քիմիայի ինստ-ներում: 1965-ին բժիշկների կատարելագործման ինստ-ում կազմակերպել է դեղագործների վերապատրաստման դասընթացներ և մինչև 1969-ը ղեկավարել այն: Գիտական աշխատանքները վերաբերում են մի շարք դեղանյութերի, կենսաբանորեն ակտիվ, բնական ու սինթետիկ միացությունների, կենդանական թույների դեղաբանական հատկությունների, թունավոր նյութերի ազդեցության մեխանիզմների, թունավորման կանխարգելման և բուժման նպատակով օգտագործվող դեղամիջոցների ուսումնասիրությանը: Հետազոտել է նաև Հայաստանի հանքային ջրերի (Արզնի, Ջերմուկ) քիմ. ու դեղաբանական հատկությունները, որոշ դեղաբույսեր և դրանց աշխարհագրական տարածվածությունը: Մ. եղել է Հայաստանի դեղաբանների գիտական ընկերության պատվավոր նախագահ, դեղագործության համամիութենական գիտ. ընկերության վարչության անդամ:

**ՄԵԴՆՈԳՈՐՍԿ**, քաղաք ՌՍՖՍՀ Օրենբուրգի մարզում: Երկաթուղային կայարան է: Կան «Ուրալէլեկտրոմոտոր», երկաթբետոնե իրերի, կաթի, գարեջրի գործարաններ, ինդուստրիալ տեխնիկում, բժշկական ուսումնարան: Հիմնադրվել է 1939 թվականին:

**ՄԵԴՈՎԿԱ**, գյուղ Հայկական ՍՍՀ Կալինինոյի շրջանում, Մեդովկա լեռան արևմտյան ստորոտին, շրջկենտրոնից 7 *կմ* հարավ-արևելք: Կոլտնտեսությունն զբաղվում է անասնապահությամբ, կարտոֆիլի, կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, կապի բաժանմունք, կինո, մանկապարտեզ, բուժկայան: Գյուղը գազիֆիկացված է: Մ-ի շրջակայքում պահպանվել են ամրոց և գյուղատեղի:

Մեդովկա



**ՄԵԴՐԵՍԵ** (արաբ. մադրասա, <դարասա — ուսումնասիրել), մահմեդական միջնակարգ և բարձրագույն դպրոց: Պատրաստում է պաշտամունքի ծառայողներ մահմեդական տարրական դպրոցների՝ մ ե կ թ ե բ ե ն ե ր ի ուսուցիչներ, ինչպես նաև պետ. ապարատի աշխատողներ Մերձավոր ու Միջին Արևելքի և այլ երկրների համար: XX դ. 60-ական թթ. իսլամական շատ երկրներում ձևավորվեց Մ-ների երկու հիմնական տիպ՝ աշխարհիկ բնույթի (մտնում է ժող. կրթության համակարգի մեջ) և Ղուրանի ընթերցման (պաշտամունքի ծառայողներ պատրաստող): Բոլոր աշխարհիկ Մ-ներում Ղուրանի ուսումնասիրումը պարտադիր է: Մ-ի շրջանավարտները իրավունք ունեն ընդունվել համալսարան: ՍՍՀՄ-ում գործում է (1973-ից) Բուխարայի Միրի-Արաբ Մ., որ տալիս է միջնակարգ աստվածաբանական կրթություն (տես նաև *Հոգևոր ուսումնական հաստատություններ):*

Մ. որպես ճարտ. կառույցի տիպ կազմավորվել է մահմեդական աշխարհի Արևելքում, X—XI դդ. (Ֆարջեկ՝ Բուխարայում. X դ. չի պահպանվել), Նիզամիե՝ Խարգիրդում (Իրան, XI դ.): XII—XIII դարերից Մ-ներ են կառուցվել Մերձավոր Արևելքում, իսկ XIII—XIV դարերից՝ Աֆրիկայի հս-ում: Մ-ի 1—2-հարկանի շենքն ընդգրկում է ուղղանկյուն բակի շուրջը դասավորված խուցեր, մզկիթ, լսարան: Տիպաբանական ընդհանրություններով հանդերձ, տարբեր շրջանների Մ-ներին բնորոշ են հատակագծային և կոնստրուկտիվ տարբեր լուծումներ: Մ-ները զարդարվել են արհեստական մարմարի, քարի, փայտի փորագրություններով, փորագրազարդ թրծակավով և ջնարակած սալիկներով: Համաշխարհային ճարտ-յան լավագույն նմուշներից են՝ Բու-Ինանիա (XIV դ., Ֆես), Ուլուգբեկի (XV դ., Սամարղանդ), Միրի-Արաբ (XVI դ., Բուխարա) Մ-ները:

**ՄԵԴՈՒԶԱՆԵՐ**, ծովային *աղեխորշավորների*՝ սցիֆոիդների և հիդրոիդների մեծ մասի սեռական սերնդի հիմնականում ազատ լողացող անհատները: Առաջանում



Քաղցրահամ ջրերի մեդուզա

են բողբոջմամբ, նստակյաց անսեռ սերնդի՝ պոլիպի վրա: Կիսաթափանցիկ, դոնդողանման մարմինը հովանոցաձև է կամ զանգակաձև, մի քանի *մմ*-ից մինչև 2,3 *մ* տրամագծով, շոշափուկներով եզրազված: Բերանային անցքը հովանոցի ստորին մասում է, հաճախ շրջապատված բլթակներով: Ստամոքսից ճյուղավորվում են աղիքանոթային համակարգի խողովակները: Նյարդային համակարգն ավելի է զարգացած, քան պոլիպինը: Ունեն տեսողական և հավասարակշռության զգայարաններ: Մ. բաժանասեռ են, սեռական արգասիքները մեծ մասամբ դրվում են ջրում, որտեղ և կատարվում է բեղմնավորումը: Սաղմը զարգանալով կպչում է հատակին և վերածվում պոլիպի: Որոշ տեսակների մոտ սերունդների հաջորդականությունը բացակայում է, և Մ. զարգանում են ձվից: Մ. շարժվում են հովանոցի խոռոչից ջուրը դուրս հրելով: Սնվում են պլանկտոնային օրգանիզմներով: Որոշ Մ-ի խայթոցից կարող է այրուցք առաջանալ:

**ՄԵԶ**, կենդանիների և մարդու *երիկամներում* մշակվող արտաթորության նյութ: Մ-ի միջոցով օրգանիզմից հեռանում են ավելցուկային ջուրը, աղերը, նյութափոխանակության վերջնական արգասիքները, ինչպես նաև օտար նյութերը: Բնականոն Մ. թափանցիկ, հարդագույն հեղուկ է, տեսակարար կշիռը 1,010—1,025 *գ/սմ³* է, pH=4,8÷8,0: Մ. պարունակում է մոտ 96% ջուր, 1,5% աղեր, 2,5% օրգ. նյութեր (միզանյութ, միզաթթու ևն): Հասուն մարդն օրական արտազատում է 1000—1800 *մլ* Մ. (տես *Միզապատություն*): Մ-ի քանակը և բաղադրությունը կախված են խմելու ռեժիմից, սննդի բնույթից, շրջապատող միջավայրի ջերմաստիճանից, ֆունկցիոնալ ծանրաբեռնվածությունից ևն: Մ-ի քննությամբ որոշում են երիկամների, ինչպես նաև օրգաններում, հյուսվածքներում և ամբողջ օրգանիզմում կատարվող փոխանակության վիճակը: Տես նաև *Արտաթորության համակարգ, Երիկամաբորբ*:

**ՄԵԶԵՆՔԻՄ** (< *մեզո*... և հուն. ἔγχυμα — լցված, այստեղ՝ հյուսվածք), բազմաբջիջ կենդանիների մեծամասնության և մարդու սաղմնային շարակցական հյուսվածք: Զարգանում է առաջնային սաղմնային թերթիկներից անջատված բջիջներից: Վաղ շրջանում բաղկացած է շարժուն ելուստավոր բջիջներից, որոնք հետագայում միանալով՝ ցանց կամ կուտակումներ են առաջացնում: Ձևավորվում է *էնտոդերմից, մեզոդերմից* (էնտոմեզենքիմ) և *էկտոդերմից* (էկտոմեզենքիմ): Ողնաշարավորների և մարդու էնտոմեզենքիմից առաջանում են շարակցական հյուսվածքը, արյունատար անոթները, արյան ձևավոր տարրերը, հարթ մկանները, էկտոմեզենքիմից՝ ընդերային կմախքը, գունակային բջիջները և մաշկի շարակցահյուսվածքային շերտի մի մասը: Երբեմն Մ. են անվանում նաև ֆիբրոբլաստները և ցանցանման (ռետիկուլային) բջիջները:

**ՄԵԶԻՏԻԼԻ ՕՔՍԻԴ**, $(CH_3)_2C{=}CH{-}CO{-}CH_3$, ճարպային շարքի չհագեցած կետոն: Դաղձի սուր հոտով, անգույն հեղուկ է, եռման ջերմաստիճանը՝ 128,3°C, հալմանը՝ −46,4°C, խտությունը՝ 854,8 *կգ/մ³* (20°C-ում): Ջրի հետ առաջացնում է ազեոտրոպ խառնուրդ (65,2% Մ. o., $t_{եռ.}$=91,8°C): Լուծվում է օրգ. լուծիչներում: Օգտագործվում է որպես լուծիչ նիտրոթաղանթանյութի, էթիլթաղանթանյութի, պոլիվինիլքլորիդի, կաուչուկի, բնական խեժերի և այլ նյութերի համար: Օժտված է թույլ գրգռիչ և նարկոտիկ հատկություններով:

**ՄԵԶԻՐԵ**, Մ ե զ ե ր ե, Մ ե զ ր ե (արաբ. Միզիրա՝ ցանքատեղ, ցանքադաշտ), թուրք. Է լ յ ա զ ը կ, քաղաք Արևմտյան Հայաստանում, Խարբերդ քաղաքից 5 *կմ* հարավ-արևմուտք, 1878-ից նախկին Խարբերդի (այժմ՝ Էլյազըկ) վիլայեթի վարչա-

կան կենտրոնը: 131 հզ. բն. (1975): Գործում են սննդի, թեթև արդյունաբերական ձեռնարկություններ, ունի օդանավակայան: Մ. հիմնադրել են խարբերդցի հայերը 1617-ին: 1914-ին Մ. ուներ 16 հզ. խառը բնակիչ, որոնց կեսը՝ հայ: Զբաղվում էին հիմնականում արհեստներով և առևտրով: Քաղաքում կային արդյունաբերական ձեռնարկություններ: Ֆաբրիկատուրյան եղբայրների հիմնադրած (1869) մետաքսի գործարանի արտադրանքը արդյունահանվում էր Մերձավոր Արևելքի շատ քաղաքներ: Մ-ում գործում էին *Մեզիրեի ազգային կեդրոնական վարժարանը* (հիմն. 1892), Աղջկանց վարժարանը, Ֆրանս. կոլեժը (հիմն. 1895), Գերմ. կոլեջը (հիմն. 1897), Կապուցին միաբանության հիմնարկությունը, նախակրթարաններ և մանկապարտեզներ: Մ-ում կային եկեղեցիներ (Ս. Սարգիս, հիմն. 1832, Ս. Աստվածածին Մայր եկեղեցի, հիմն. 1870, հայ բողոքականների եկեղեցի, հիմն. 1887, հայ կաթոլիկների եկեղեցի, հիմն. 1889): Մ-ի հայերը տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում: Մ-ում է ծնվել գրող Վահան Թոթովենցը:

*Գրկ.* Վ ա հ ե  Հ ա յ կ, Խարբերդ և անոր ոսկեղենն դաշտը, Նյու Յորք, 1959:

**ՄԵԶԻՐԵԻ ԱԶԳԱՅԻՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ**, հիմնադրվել է 1892-ին, *Մեզիրեում* (Արևմտյան Հայաստան), տեղի կրթական միությունների ջանքերով: Սկզբում արական էր, հետո՝ երկսեռ: Ուներ 12 դասարան՝ 4 մանկարան, 4 նախակրթարան, 4 բարձրագույն: Դասավանդվում էին հայերեն, ֆրանս., անգլ., թուրք.: Աշակերտների թիվը հասնում էր 100-ի, ծախսերի մեծ մասը հոգում էր Ամերիկայի կրթասեր մեզիրեցիների միությունը: Հրատարակում էր «Նոր զարուն» խմորատիպ օրաթերթը (1908-ից՝ «Ծովաց արծիվ»): Տեսուչներ են եղել Հ. Սիմոնյանը, Ռ. Զարդարյանը: Վերջին տնօրենն ու դաստիարակն էր Երուխանը: 1913-ին հաստատությանը կից բացվել է ճեմարան՝ 2 տարվա դասընթացով, որտեղ սովորում էին ուսումնարանն ավարտողները: Շրջանավարտները ուսումը շարունակում էին համալսարաններում կամ դառնում ուսուցիչներ: 1913-ին, հայ գրերի գյուտի 1500-ամյակի առթիվ, վարժարանը կոչվել է Հայկական ճեմարան: Փակվել է 1915-ին, վերաբացվել՝ 1918-ին և գործել մինչև 1923-ը:

**ՄԵԶՈ** ..., մ ե զ ... (< հուն. μέσος — միջին, միջանկյալ), բարդ բառերի սկզբնամաս, որ ցույց է տալիս միջին մեծություն կամ որևէ բանի միջանկյալ դիրքը (օրինակ, *մեզոպաուզա*, *մեզոդերմ*, *մեզոլիթ*):

**ՄԵԶՈԱՏՈՄ** [<*մեզո*...(և) և *ատոմ*], ատոմանման համակարգ, կազմավորվում է, երբ ատոմի միջուկի կուլոնյան դաշտը զավթում է թիրախի նյութի մեջ արգելակվող բացասական լիցքավորված մասնիկները ($\mu^-$, $\pi^-$, $K^-$-մեզոններ են): Մ-ի գոյությունը կանխագուշակել է ամերիկացի ֆիզիկոս Ջ. Ուիլերը, 1949-ին, $\pi^-$-մեզոնի հայտնագործումից հետո: Ատոմի ուղեծրում *մեզոնի* տեղ գրավելը ուղեկցվում է արտաքին էլեկտրոններից մեկի հեռացմամբ, ուստի Z ատոմական համարով տարրի Մ. բաղկացած է Ze դրական էլեկտրական լիցքով միջուկից, բացասական մեզոնից և (Z—1) էլեկտրոնից: Սովորաբար Մ. կազմավորվում է գրգռված վիճակում: Այնուհետև $10^{-13}$ *վրկ* կարգի ժամանակամիջոցում տեղի է ունենում Մ-ի ապագրգռում ոչ ճառագայթային անցումների հետևանքով, այսինքն՝ զավթված մեզոնը հաջորդաբար անցնում է նվազ գրգռված վիճակի, իսկ էներգիայի ավելցուկը ծախսվում է ատոմից էլեկտրոնի դուրս մղման համար (Օժե-պրոցեսներ): Հետո սկսվում են ճառագայթային անցումները (մեզոնային γ-ճառագայթում), որոնք տևում են այնքան, մինչև մեզոնը հասնում է հնարավոր նվազագույն էներգետիկ վիճակին: Հիմնական վիճակին հասած մեզոնը Մ-ում մնում է այնքան ժամանակ, քանի դեռ չի տրոհվել կամ զավթվել միջուկի կողմից: Նշանակում է, Մ-ի կյանքի տևողությունը մեզոնի կյանքի տևողության կարգի մեծություն է: Մ-ի շառավիղը հիմնական վիճակում $5\cdot10^{-9}\times\times\frac{\mu}{Z\mu_\mu}$ *սմ* կարգի է ($\mu_\mu$-ը և μ-ն մեզոնի և էլեկտրոնի բերված զանգվածներն են): Քանի որ Մ-ներում մեզոններն ավելի մոտ են գտնվում միջուկին, քան էլեկտրոնները, ուստի միջին և ծանր միջուկներում Մ-ի հիմնական վիճակում գտնվող մեզոնները կյանքի տևողության մեծ մասն անցկացնում են միջուկի ներսում: Տարբեր Մ-ների հատկությունների ուսումնասիրությունը տեղեկություն է տալիս տարրական մասնիկների, դրանց փոխազդեցությունների, ինչպես նաև ատոմի միջուկի մասին: Այսպես, $\mu^-$-մեզոատոմի միջոցով հնարավոր է տեղեկություն ստանալ միջուկի ձևի և չափերի, միջուկի ծավալում էլեկտրական լիցքերի բաշխման մասին: Մ-ի ռենտգենյան ճառագայթման սպեկտրները զգալիորեն հարուստ են սովորական ռենտգենյան սպեկտրից, իսկ դրանց կառուցվածքն էապես կախված է միացություն կազմող տարրերի քիմ. և ֆիզիկական վիճակից: Այդ սպեկտրների օգնությամբ կարելի է ուսումնասիրել Մ. պարունակող մոլեկուլների էլեկտրոնային թաղանթի կառուցվածքը: Հետազոտությունների այս ուղղությունն ստացել է մ ե զ ո ն ա յ ի ն  ք ի մ ի ա անվանումը:

*Գրկ.* Вайсенберг А. О., Мю-мезон, М., 1964; Бархоп Э., Экзотические атомы, «Успехи физических наук», 1972, т. 106, в. 3.
*Վ. Վարդանյան, Ս. Գևորգյան*

**ՄԵԶՈԴԵՐՄ** (< *մեզո*... և հուն. δέρμα — մաշկ), մ ե զ ո բ լ ա ս տ (հուն. βλαστος — սաղմ, ընձյուղ), բազմաբջիջ կենդանիների (բացի սպունգներից ու աղեխորշավորներից) և մարդու սաղմնային միջին թերթիկ: Գտնվում է *էկտոդերմի* և *էնտոդերմի* միջև: Անողնաշարավորների մեծամասնության Մ. առաջանում է նշված շերտերի միջև առկա 2 խոշոր բջիջներից՝ տելոբլաստներից: Որոշ անողնաշարավորների, քորդավորների և մարդու մոտ Մ. սկզբնավորվում է էկտոդերմի և էնտոդերմի միջև կուտակված բջիջներից և ապա ներքաշվում սաղմի մեջ: Սաղմի զարգացման պրոցեսում Մ. տարբերակվում է առանցքային Մ-ի (որից գոյանում են սոմիտները) և կողմնային թիթեղիկների ու *մեզենքիմի*: Վերջիններից ձևավորվում են շարակցական հյուսվածքը, մկանային, արյունատար, արտաթորության, սեռական համակարգերը և մարմնի երկրորդային խոռոչի ծածկույթը:

**ՄԵԶՈԶՈՅԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆ** (< *մեզո*... և հուն. ζωή— կյանք), Երկրի շերտագրական սանդղակի նախավերջին խումբը և երկրաբանական պատմության նրան համապատասխանող դարաշրջանը: Ընդգրկում է 230-ից մինչև 67 մլն տարի մ. թ. ա.: Մ. դ-ի տևողությունը մոտ 163 մլն տարի է: Մ. դ. առաջին անգամ անջատել է անգլիացի երկրաբան Ջ. Ֆիլիպսը, 1841-ին: Բաժանվում է 3 ժամանակաշրջանի՝ *տրիասի ժամանակաշրջան*, *յուրայի ժամանակաշրջան* և *կավճի ժամանակաշրջան*: Մ. դ-ի ընթացքում են ձևավորվել ժամանակակից մայր ցամաքների և, հավանաբար, օվկիանոսների իջվածքների մեծ մասի (բացառությամբ Խաղաղականի, որն, ըստ երևույթին, գոյություն է ունեցել ավելի վաղ) հիմնական ուրվագծերը: Մ. դ. բնութագրվում է գլխավորապես մերկասերմ ու պտերային բուսականությամբ և այնպիսի ֆաունայով, որտեղ ողնաշարավորների մեջ գերակշռում են սողունները: Բնորոշ է նաև ծածկասերմ բույսերի, կաթնասունների և թռչունների երևան գալը: Պալեոզոյան դարաշրջանի վերջում բոլոր հին պլատֆորմները բարձրանում են ծովի մակարդակից և գոտևորվում *հերցինյան ծալքավորության* հետևանքով առաջացած ծալքավոր լեռնային համակարգերով: Հվ. կիսագնդում էր գտնվում *Գոնդվանա* հնագույն վիթխարի մայր ցամաքը: Պալեոզոյան դարաշրջանի վերջում երկրակեղևի մայրցամաքային մարզերը հսկայական տարածություններ են գրավում: Մեզոզոյից սկսվում է դրանց իջեցումը, որն ուղեկցվում է ծովի տրանսգրեսիաներով: Գոնդվանան տրոհվում է առանձին մայր ցամաքների (Աֆրիկա, Հարավային Ամերիկա, Ավստրալիա, Անտարկտիդա և Հնդստանի թերակղզու զանգվածը): Պերմի և տրիասի սկզբի արիդային պայմանները մեզոզոյում փոխվում են ավելի խոնավ կլիմայով: Կավճի ժամանակաշրջանի կեսերին բուսականության կազմում կատարվում է կտրուկ փոփոխություն. ծածկասերմ բույսերը սկսում են տիրապետող դիրք գրավել, որը և պահպանվում է մինչև այժմ: Մ. դ-ի ընթացքում զգալիորեն փոխվում է նաև ծովերի ֆլորայի և ֆաունայի կազմը: Պալեոզոյան սեռերը և տեսակները լրիվ անհետանում են տրիասի սկզբում և փոխվում նորերով: Զարգանում են թերթախռիկավորներն ու փորոտանիները, իսկ ուսոտանիները, որ տիրապետում էին պալեոզոյում, ետին պլան են մղվում: Գլխոտանիներից ծաղկման են հասնում ամոնիտները և բելեմնիտները, ձկներից գերիշխում են փշոտ տեսակները: Մ. դ-ի վերջում մահանում են խոշոր ծովային սողունները (իխտիոզավրերը), անողնաշարավորներից՝ ամոնիտները, բելեմնիտները են: Մ. դ-ի նստվածքների հետ կապված են մի շարք օգտակար հանածոների հանքավայրեր՝ քարածուխ (ՍՍՀՄ ասիական մաս, Չինաստան, ԱՄՆ), նավթ, երկաթ (ՍՍՀՄ, Ֆրանսիա), բոքսիտներ

(ՍՍՀՄ, Հունգարիա, Ռումինիա), ֆոսֆորիտներ, քարաղ (ՍՍՀՄ): Խաղաղօվկիանոսյան գոտու ծալքավոր մարզերի ինտրուզիվ ապարների հետ են առնչված ոսկու, արծաթի, պղնձի, կապարի, ցինկի հանքավայրեր: Մ. դ-ի հետ են կապված Սոմխեթա—Ղարաբաղյան և Ծաղկունք—Զանգեզուրյան գոտիների գրանիտոիդային ինտրուզիաների մեծ մասը, գրեթե բոլոր ուլտրամաֆիտային ինտրուզիաները և դրանց հարող գունավոր, սև ու հազվագյուտ մետաղների հանքավայրերը:

**ՄԵԶՈԶՈՅԱՆ ԾԱԼՔԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ**, երկրակեղևի առանձին մարզերում և գոտիներում արտահայտված ծալքավոր դեֆորմացիաներ, որոնք տեղի են ունեցել *մեզոզոյան դարաշրջանում*: Ուժգին կերպով արտահայտվել են տրիասի և յուրայի սահմաններում՝ Դոբրուջայում, Մանգըշլակում, Իրանում, Հնդկաչինում (վաղ կիմերյան կամ հնդկաչինյան օրոգենեզ): Վերին յուրայի և ստորին կավճի սահմանում ընդգրկել են Մոնղոլա-Օխոտյան գեոսինկլինալի, Վերխոյանսկի, Լեռնային Անդրկովկասի, Իրանի կենտրոնական շրջանները (ուշ կիմերյան կամ անդյան օրոգենեզ): Ստորին ու վերին կավճի սահմանում (ավստրիական օրոգենեզ) և առավելապես վերին կավճի ու պալեոգենի սահմանում (լարամյան օրոգենեզ) ձևավորվել են Կամչատկայի, Սիխոտե-Ալինի, Հայկական բարձրավանդակի, Անատոլիայի, Ժայռոտ լեռների մի շարք խոշորագույն ստրուկտուրաներ: Զգալի տեկտոնական ակտիվություն են ցուցաբերել նաև Կենտրոնական Եվրոպան, Սիբիրական և Հարավ-Չինական պլատֆորմների եզրամասերը: Մ. ծ-յան ընթացքում են առաջացել բազմաթիվ գրանիտոիդային ինտրուզիաներ ու սիալիկ վուլկանիտներ: Մեզոզոյան դարաշրջանում են ձևավորվել նաև Միջերկրածովյան օրոգենի օֆիոլիտային գոտիները: Նշված մագմատիկ զանգվածների հետ կապված են անագի, վոլֆրամի, մոլիբդենի, պղնձի, ոսկու, նիկելի, քրոմիտի, երկաթի և մի շարք այլ հանածոների հանքավայրերը:

**ՄԵԶՈԼԻԹ** (*մեզո*...և...*լիթոս*), միջին քարի դար, *քարի դարի* միջին՝ *պալեոլիթի* և *նեոլիթի* միջև ընկած ժամանակահատվածը: Մ. Եվրոպայում ունի 10—7 հզ. (հս. շրջաններում՝ մինչև 6—5 հզ.) տարվա, Մերձավոր Արևելքում՝ 12—9 հզ. տարվա վաղեմություն: Մեզոլիթյան մշակույթներին բնորոշ են քարե մանր գործիքներ (միկրոլիթներ): Մ-ում գործածվել են նաև ոսկրից և եղջյուրից գործիքներ (նիզակի ծայրեր, եռաժանիներ, ձկնորսական կեռիկներ ևն): Կավե ամանները ի հայտ են եկել Մ-ից նեոլիթին անցման ժամանակաշրջանում: Տնտեսության հիմքը կազմել են որսորդությունը, ձկնորսությունը և հավաքչությունը: Մ-ում երկրագնդի մի շարք շրջաններում նախադրյալներ են ստեղծվել անասնապահության ու երկրագործության համար: Մեզոլիթյան կայանների զգալի մասը բաղկացած են եղել մի քանի ժամանակավոր կացարաններից: Որոշ բնակավայրերի մոտ եղել են տոհմական գերեզմանոցները: Մեզոլիթյան շրջանին են պատկանում ազիլյան, տարդենուազյան (Արևմտյան Եվրոպա), կապսիական (Հարավային Աֆրիկա), խոաբինյան (Հարավ-Արևելյան Ասիա) և այլ մշակույթներ: Հայկ. լեռնաշխարհի Մ. ընդգրկում է մ. թ. ա. 12000—8/7000 թթ.: Հայաստանի տարածքում միկրոլիթյան գործիքների (սրածայրեր, քերիչներ, նետասլաքներ ևն) կուտակումներ են հայտնաբերվել Թալինի շրջանում գտնվող Ջաղա, Արեգունի-բլուր և այլ քարայր-կայաններից: Արագած լեռան, Գեղամավանի, Սյունյաց լեռների մի շարք ժայռապատկերներ Մ-յան մարդկանց արվեստի նմուշներ են:

*Գրկ.* Սարդարյան Ս. Հ., Նախնադարյան հասարակությունը Հայաստանում, Ե., 1967: Бадер Н. О., Мезолит, в кн.: Каменный век на территории СССР, М., 1970.

**ՄԵԶՈՄԵՐԻԱ** (< *մեզո*... և հուն. μέρος — մաս), մեզոմերային էֆեկտ, զուգորդում, ռեզոնանս զուգորդված համակարգերում, մոլեկուլներում քիմիական կապերի և ատոմների լիցքերի մասնակի ապատեղայնացման երևույթը: Մ. տեղի ունի հիմնականում զուգորդված կրկնակի կապեր և չօգտագործված էլեկտրոնային զույգեր պարունակող մոլեկուլներում և արտահայտում է մոլեկուլի իրական վիճակը: Այդ մոլեկուլների համար քիմ. կառուցվածքի դասական տեսությունը հնարավոր է համարում երկու կամ ավելի համարժեք կառուցվածք: Իրականում մոլեկուլը այդ կառուցվածքների ռեզոնանսային հիբրիդն է (տես *Ռեզոնանսի տեսություն*): Ըստ դասական պատկերացման կարբօքսիլատ իոնում թթվածնի ատոմներից մեկը ածխածնի ատոմի հետ կապված է կրկնակի կապով և լիցք չունի, իսկ մյուսը՝ պարզ կապով և կրում է իոնի ողջ լիցքը: Այն պատկերում են I կամ II բանաձևերով՝




Սակայն ուսումնասիրությունը ցույց է տվել, որ թթվածնի ատոմները համարժեք են՝ կրում են միատեսակ մասնակի լիցքեր (δ—) և ածխածնի հետ միացած են միատեսակ կապերով: Իոնի իրական կառուցվածքը I-ի և II-ի զուգորդումն է, որը պատկերում են այդ կառուցվածքների ռեզոնանսի (III) կամ մեզոմերային բանաձևի օգնությամբ (IV կամ V)՝




Մ. ավելի ցայտուն է արտահայտվում զուգորդված կրկնակի կապերով մոլեկուլներում.




Բենզոլի մոլեկուլում Մ. չի բերում մասնակի լիցքերի առաջացում: Մ. բացատրում է նյութերի բազմաթիվ հատկություններ և ռեակցիաների մեխանիզմներ, հատկապես օրգ. քիմիայում: Մ-ի տեսությունը մշակել է անգլիացի քիմիկոս Ք. Ինգոլդը:

**ՄԵԶՈՆԻՆ** (< իտալ. mezzanino), վերնակառույց՝ բնակելի (սովորաբար ոչ մեծ) տան միջնամասի վրա: Հաճախ ունենում է պատշգամբ: Ռուսաստանում տարածում են գտել որպես քարե, հատկապես՝ սակավահարկ փայտե շենքերի մաս:

**ՄԵԶՈՆՆԵՐ** (< հուն. μέσος — միջին, միջանկյալ), ուժեղ փոխազդող անկայուն *տարրական մասնիկներ*, որոնք, ի տարբերություն *բարիոնների*, ունեն զրոյական բարիոնային լիցք և զրոյի կամ ամբողջ թվի հավասար սպին (ենթարկվում են *Բոզե-Էյնշտեյնի վիճակագրությանը*): Ընդհանուր տեսակետից Մ. համարվում են ուժեղ (միջուկային) փոխազդեցության տարածողներ: Այդ տեսակետի հիման վրա Հ. *Յուկավան* 1935-ին կանխագուշակել էր, մասնավորապես, π-մեզոնի գոյությունը, որը հետագայում (1947) հայտնաբերվել է տիեզերական ճառագայթներում: π-մեզոնն իր զանգվածով (մոտավորապես 1/7 պրոտոնի զանգված) միջանկյալ տեղ է գրավում էլեկտրոնի և պրոտոնի միջև. այստեղից էլ ծագել է «Մ.» անվանումը: Բարձր էներգիայի ժամանակակից արագացուցիչներում ծնվում են տարբեր տեսակի Մ.: Դրանց մեծ մասն ունի կարճատև կյանք ($\sim 10^{-23}$ *վրկ*) և տրոհվում է ուժեղ փոխազդեցությամբ (այսպես կոչված, մեզոնային ռեզոնանսներ): Մ-ի դասակարգման օրինաչափությունները պարզ և հիմնավոր ձևով բացատրվում են *քվարկների* մոդելով, ըստ որի՝ Մ. կարելի է պատկերացնել որպես երկու սկզբնական մասնիկների՝ քվարկի և հակաքվարկի կապված համակարգեր: Բոլոր հայտնի Մ. ընդգրկելու համար անհրաժեշտ է դիտարկել առնվազն չորս տեսակի քվարկներ (u, d, s, c): Տարբեր Մ-ի նույն հատկությունները համապատասխանաբար որոշվում են իրենց քվարկային կազմով: Օրինակ, չորրորդ՝ c-քվարկն օժտված է հմայքով (տես *Հմայք տարրական մասնիկների*): «Հմայված» Մ., որոնց կազմի մեջ մտնում է c-քվարկը, հայտնաբերվել են 1974—76-ին. դրանք ունեն մոտավորապես 2 պրոտոնի զանգված և կյանքի համեմատաբար երկար տևողություն ($\approx 10^{-12}$—$10^{-13}$ *վրկ*), քանի որ հմայքի պահպանումն արգելում է նրանց արագ տրոհումը ուժեղ փոխազդեցությամբ: 1976—78-ին ստացված փորձնական տվյալները չեն բացառում բոլորովին նոր տիպի Մ-ի գոյությունը, որոնց դասակարգման համար անհրաժեշտ է ավելացնել քվարկների տեսակների թիվը:

*Ա. Խոջամիրյան*

**ՄԵԶՈՍՖԵՐԱ** (*մեզո*... և հուն. σφαῖρα — գունդ, ոլորտ), մթնոլորտի շերտ Երկրի մակերևույթից 40—50-ից մինչև 80—85 *կմ* բարձրության վրա: Բնութագրվում է ըստ բարձրության օդի ջերմաստիճանի 0°C-ից (ստորին սահման) մինչև —90°C (վերին սահման) անկումով: Մ. երբեմն անվանում են նաև տրոպոսֆերայի ստորին, տեղական կլիմայի (մեզոկլիմա) կազմավորման շերտ:

**ՄԵԶՈՖԻՏՆԵՐ** (*մեզո*... և հուն. φυτόν— բույս), բույսեր, որոնք աճում են բավարար խոնավություն ունեցող հողերում: Միջանկյալ խումբ է քսերոֆիտ և հիգրոֆիտ բույսերի միջև: Հիմնականում աճում են բարեխառն գոտու արևադարձային և մերձարևադարձային անտառներում: Մ. են տերևաթափ ծառերը և թփերը, մարգագետնային (երեքնուկ, սիզախոտ ևն), անտառային (հովտաշուշան ևն) խոտաբույսերի մեծ մասը: Երբեմն նաև Մ. են կոչվում տափաստանային և անապատային միամյա ու երկամյա վաղ գարնանային բույսերը, ինչպես նաև գյուղատնտ. որոշ կուլտուրաներ ու մոլախոտեր:

**ՄԵԶՊՈՒՐՅԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ**, հիմնվել է 1865-ին, Կ. Պոլսի Գում Գափու թաղամասում, Մկրտիչ Մեզպուրյանի նախաձեռնությամբ: Սկզբում եղել է երկսեռ, նախակրթարանի մակարդակով: 1879-ին տեղափոխվել է Սկյուտար և վերածվել աղջիկների երկրորդական (միջնակարգ) ուս. հաստատության: Նպատակն էր պատրաստել գրագետ մայրեր, ուսուցչուհիներ: Ուներ երեք բաժանմունք՝ մանկապարտեզ, նախակրթարան և ուսումնարան: Ավանդվել են հայերեն (գրաբար, աշխարհաբար), ֆրանս., թուրք., հայ ժողովրդի պատմություն, աշխարհագրություն, հանրահաշիվ, երկրաչափություն, բնագիտություն, երաժշտություն, ձեռագործ ևն: Դասավանդել են Մ. Մեզպուրյանը, Զ. Խանջյանը, Ս. Գաբամաչյանը, Հ. Ոսկյանը, Գ. Մալաթյանը և ուրիշներ: 1896-ին վարժարանը փակվել է միջոցների սղության պատճառով: 1900-ին Հ. Փալազաշյանի և նրա քույրերի աջակցությամբ, Մ. վ-ի հիման վրա, Գատը գյուղում ստեղծվել է Փալազաշյան գիշերօթիկ երկսեռ դպրոցը:

*Ա. Իգնատյան*

**ՄԵԶՐԵ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Կարաքիլիսեի գավառում: 1909-ին ուներ 40 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին:

**ՄԵԹԱՆ**, ճահճագազ, հանքագազ, $CH_4$, հագեցած ածխաջրածինների պարզագույն ներկայացուցիչը: Անգույն, անհոտ գազ է, հեղուկացման ջերմաստիճանը —164,5°C, պնդացմանը՝ —182,5°C: Օդից թեթև է մոտ 1,8 անգամ: Ջրում գործնականորեն չի լուծվում: Ամենակայուն ածխաջրածինն է, լավ վերականգնիչ, օդում այրվում է համարյա անգույն բոցով (այրման ջերմությունը՝ 50,08 *Մջ/կգ* կամ 11954 *կկալ/կգ*): Օդի և Մ-ի (5—16 ծավ.%) խառնուրդները պայթուցիկ են: Մ. օգտագործվում է որպես վառելագազ և օրգ. նյութերի արտադրության հումք: Մ-ի քլորացումից ստացվում է մեթիլքլորիդ, մեթիլենքլորիդ, քլորոֆորմ, քառաքլորածխածին, կատալիտիկ օքսիդացումից՝ ացետիլեն և մրջնալդեհիդ, ծծմբի հետ՝ ծծմբածխածին, ամոնիակի հետ՝ կապտաթթու: Մ-ից ստանում են նաև ջրածին, մուր և ջրագազ: Մ. բնական գազերի (77—99 ծավ. %), նավթագազերի (31—90%) և հանքագազի (34- 40%) հիմնական բաղադրիչն է: Առաջանում է օրգ. նյութերի նեխումից: Պարունակվում է նավթանյութերի ջերմային մշակման (10—57 ծավ. %) և ածխի կոքսացման ու հիդրման (24—34%) գազերում:

**ՄԵԹԱՆԹԵՆԿ**, մեթանթանկ (*մեթան* և անգլ. tank — բաք), մեծ տարողության (մինչև մի քանի հզ. *մ*³) երկաթբետոնե ռեզերվուար. նախատեսված է բակտերիաների և այլ միկրոօրգանիզմների օգնությամբ անաերոբ պայմաններում (առանց օդի մուտքի) *կեղտաջրերի* նստվածքի օրգ. մասի կենսբ. վերամշակման (խմորման) համար: Օրգ. նյութերի քայքայումը ընթանում է երկու փուլով: Առաջինում ածխաջրերից, ճարպերից և սպիտակուցներից առաջանում են ճարպաթթուներ, ջրածին, ամինաթթուներ ևն: Երկրորդ փուլում տեղի է ունենում թթուների քայքայում՝ առավելապես մեթանի և ածխաթթու գազի առաջացումով: Մ. է լցվում սովորաբար հում (թարմ) նստվածքի խառնուրդ՝ առաջնային *պարզարաններից*, և ավելցուկային ակտիվացված տիղմ՝ երկրորդային պարզարաններից: Մ-ում խմորվող զանգվածը տաքացվում է և խառնվում: Տաքբերում են մեզոֆիլ (30—35°C) և ջերմաֆիլ (50—55°C) խմորում: Վերջին դեպքում քայքայման պրոցեսն ավելի արագ է ընթանում, բայց խմորված նստվածքը դժվարությամբ է ջրազրկվում: Խմորման ժամանակ անջատվող գազերի խառնուրդը բաղկացած է մեթանից (մինչև 70%) և ածխաթթու գազից (մինչև 30%): Մեթանը օգտագործվում է նստվածքը տաքացնող ջուրը ստանալու նպատակով:

**ՄԵԹԱՆՈԼ**, տես *Մեթիլալկոհոլ*:

**ՄԵԹԻԼԱԼԿՈՀՈԼ**, մեթիլսպիրտ, մեթանոլ, փայտի սպիրտ, $CH_3OH$, հագեցած միատոմ սպիրտների պարզագույն ներկայացուցիչը: Թույլ սպիրտային հոտով, անգույն հեղուկ է, հալ. ջերմաստիճանը՝ —97,88°C, եռմանը՝ 64,5°C, խտությունը՝ 792,4 *կգ/մ*³ (20°C): Մ-ի գոլորշիները օդի հետ առաջացնում են պայթուցիկ խառնուրդներ (6,72—35,5 ծավ. %), որոնց բոցավառման ջերմաստիճանն է 15,6°C: Անսահման քանակներով լուծվում է ջրում և բազմաթիվ օրգ. լուծիչներում: Ունի միատոմ սպիրտների բոլոր հատկությունները: Արդյունաբերության մեջ ստացվում է ածխածնի (II) օքսիդից և ջրածնից: Մրջնալդեհիդի, էսթերների (օրինակ, դիմեթիլ-տերեֆտալատ), ալկիլհալոգենիդների և այլ նյութերի արտադրության հումք է: Մ. ուժեղ թույն է, ազդում է նյարդային և անոթային համակարգերի վրա: 5—10 *մլ* Մ. խմելու դեպքում առաջանում է ծանր թունավորում, կուրություն, իսկ 30 *մլ*-ի դեպքում՝ մահ:

**ՄԵԹԻԼԱԿՐԻԼԱՏ**, $CH_2$= CHCOOCH$_3$, ակրիլաթթվի մեթիլ էսթերը: Անգույն հեղուկ է, եռ. ջերմաստիճանը՝ 80,2°C: Քիմ. հատկություններով նման է *մեթիլմետակրիլատին*: Ազատ ռադիկալների ներկայությամբ պոլիմերվում է՝ առաջացնելով պոլիմեթիլակրիլատներ: Օգտագործվում է համապոլիմերներ (օրինակ, ստիրոլի հետ) ստանալու համար: Արդ. ստացման եղանակներից է ացետիլենի կարբոնիլացումը մեթանոլի առկայությամբ: Թունավոր է, գրգռում է լորձաթաղանթը:

**ՄԵԹԻԼԱՑՈՒՄ**, մեթիլում, մոլեկուլում ջրածնի, հալոգենի կամ մետաղի ատոմի մեթիլ խմբով՝—$CH_3$ տեղակալումը: Մ. իրականացվում է մեթիլ յոդիդով՝ $CH_3J$, երկմեթիլ սուլֆատով՝ $(CH_3O)_2SO_2$, մեթանոլով՝ $CH_3OH$, օրգ. սուլֆոթթուների մեթիլային էսթերներով և մեթիլող այլ նյութերով: Արոմատիկ ածխաջրածինները հեշտությամբ մեթիլացվում են մեթիլքլորիդով կամ դիմեթիլեթերով՝ $AlCl_3$-ի ներկայությամբ: Մ. լայնորեն կիրառվում է արդյունաբերության մեջ՝ օրգ. սինթեզում: Մ-ման միջոցով ստանում են անալգին, ամիդոպիրին, մեթիլանիլին ևն:

**ՄԵԹԻԼԵՆԱՅԻՆ ԿԱՊՈՒՅՏ**, մեթիլենային երկնագույն, քինոնիմինային (թիազինային) ներկանյութ: Լույսի նկատմամբ կայուն է: Բյուրեղները մուգ կանաչ գույնի են, լավ լուծվում են ջրում, սպիրտում: Ջրային լուծույթը կապույտ է: Օգտագործվում է թուղթը, բամբակը, մետաքսը ներկելու, մատիտների, պոլիգրաֆիական ներկերի պատրաստման համար, վերլուծական քիմիայում, բժշկության մեջ՝ որպես հականեխիչ (այրվածքների դեպքում), հյուսվածքների մանրադիտակային ուսումնասիրություններում, որոշ թույների (օրինակ՝ կապտաթթվի) վնասազերծման և այլ դեպքերում:

**ՄԵԹԻԼՄԵՏԱԿՐԻԼԱՏ**, $CH_2$= C($CH_3$)— —COOCH$_3$, *α-մետակրիլաթթվի* մեթիլ էսթերը: Անգույն հեղուկ է, հալ. ջերմաստիճանը՝ −48°C, եռմանը՝ 101°C: Խտությունը՝ 936 *կգ/մ*³: Վատ է լուծվում ջրում, լավ՝ սպիրտում և եթերում: Գոլորշիները (4,9—12,5 ծավ. %) օդի հետ առաջացնում են պայթուցիկ խառնուրդներ: Ջրում հիդրոլիզվում է դանդաղ, թթուներում և հիմքերում՝ արագ: Կրկնակի կապի հաշվին տալիս է միացման ռեակցիաներ ($H_2$, HBr, $Cl_2$, $NH_3$, մերկապտաններ ևն): Պոլիմերվում է՝ առաջացնելով պոլիմեթիլմետակրիլատ: Պոլիմերումը կանխում են ծծումբը, պղնձի աղերը, հիդրոքինոնը ևն: Օգտագործվում է պլաստմասսաներ, հատկապես օրգ. ապակի ստանալու համար: Արդյունաբերության մեջ ստանում են ացետոնից և կապտաթթվից: Թունավոր է, ունի նարկոտիկ հատկություն, գոլորշիները գրգռում են լորձաթաղանթը: Օդում թույլատրելի պարունակությունը 0,05 *մգ/լ* է:

**ՄԵԹԻԼՏԵՍՏՈՍՏԵՐՈՆ** (Methyltestosteronum, Androral), արական սեռական հորմոնի (տես *Տեստոստերոն*) սինթետիկ պատրաստուկ: Ի տարբերություն տեստոստերոն-պրոպիոնատի, ներքին ընդունման ժամանակ պահպանում է ակտիվությունը: Հաբերի ձևով օգտագործվում է ներզատիչ գեղձերի որոշ ֆունկցիաների խանգարման դեպքում, որպես օժանդակ միջոց՝ չարորակ ուռուցքների բուժման նպատակով:

**ՄԵԹԻՈՆԻՆ**, α-ամինա —γ-մեթիլթիոկարագաթթու, $CH_3SCH_2CH_2CH(NH_2)COOH$, ծծումբ պարունակող մոնոկարբոնային ամինաթթու: Անջատվել է կազեինի թթվային հիդրոլիզի արգասիքներից (1922): Կաթնասունների և մարդու օրգանիզմում մեթիլ խմբերի դոնորի դեր է կատարում.

ցիստեինի կենսասինթեզում ծծմբի աղբյուր է: S-ադենոզիլմեթիոնինի ձևով, որն առաջանում է Մ-ի և ադենոզինեռֆոսֆորաթթվի (ԱԵՖ) փոխազդեցությունից, մասնակցում է խոլինի, *ադրենալինի* ևնի առաջացմանը: Օրգանիզմում Մ. առաջանում է ասպարագինաթթվից: Անփոխարինելի ամինաթթու է, մարդու օրական պահանջը 2,5—3 *գ* է: Մ-ի պակասը մարդու և կենդանիների սննդում առաջացնում է սպիտակուցների կենսասինթեզի խանգարում, աճի դանդաղում ևն:

**ՄԵԹՈԴ** (< հուն. μέθοδος — հետազոտման ուղի, եղանակ. տեսություն, ուսմունք), մարդու պրակտիկ և տեսական գործունեությունը կարգավորող ճանաչողական սկզբունքների, միջոցների, մոտեցումների, հնարքների ամբողջություն: Գիտական ճանաչողության Մ-ները դասակարգվում են՝ ա. ըստ կիրառության բնագավառի. այս հիմքի վրա տարբերակվում են մասնավոր գիտական (ֆիզիկական, կենսբ. ևն) և համագիտական Մ-ներ, բ. ըստ իմացության տարբեր մակարդակներում դրանց կիրառության. էմպիրիկ իմացության Մ-ներ (դիտարկում, գիտափորձ ևն) և տեսական իմացության Մ-ներ (մտային գիտափորձ, ձևայնացում, աքսիոմատիկ Մ. ևն): Վերը նշված Մ-ներից տարբերակվում են փիլ. Մ-ները, որոնք իմացության առավել ընդհանուր Մ-ներ են և պայմանավորում են իմացության պրոցեսի ընդհանուր ուղղվածությունն ու աշխարհի գիտական պատկերի էական գծերը: Գիտության ողջ պատմությունը հաստատում է, որ մատերիալիզմի, հատկապես մատերիալիստական դիալեկտիկայի սկզբունքները, ամենից ավելի են համապատասխանում գիտական իմացության բնույթին ու ներքին պահանջներին: Պատահական չէ, որ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը կատարում են գիտական իմացության ընդհանուր *մեթոդաբանության* դեր: *Ա. Մանասյան*

**ՄԵԹՈԴ ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ**, գրականության և արվեստի մեջ իրականության արտացոլման հիմնական սկզբունքների ամբողջությունը: Եթե գիտության մեջ մեթոդը առարկայի հետազոտման և գիտական ճշմարտության հասնելու ուղին է, ապա արվեստում այն ցույց է տալիս կենսական փաստերի ընտրության, ընդհանրացման և գնահատման եղանակը: Մ. գ. իրականության նկատմամբ գեղագիտական հարաբերության որոշակի տիպ է և միաժամանակ գեղարվեստական սկզբունքների ու միջոցների պատմականորեն զարգացող համակարգ: Մ. գ. անմիջական կապ ունի ու պայմանավորված է արվեստագետի աշխարհայացքով և այն գեղագիտական իդեալով, որ նա ձգտում է հաստատել: Այս առումով, արվեստի զարգացման ամեն մի աստիճան, սկսած հնագույն ժամանակներից, ենթադրում է որոշակի Մ. գ-ի առկայություն: Սակայն Մ. գ. ավելի հստակ և բազմազան արտահայտություն գտավ նոր ժամանակների արվեստում՝ սկսած եվրոպական Վերածնության դարաշրջանից: Այսպես, ինքնուրույն մեթոդ են եղել կլասիցիզմը, ռոմանտիզմը, նատուրալիզմը, սիմվոլիզմը ևն: Մեթոդների մեջ իր ազդեցությամբ ու նշանակությամբ հատուկ կարևորություն ունի ռեալիզմը՝ իր տարբեր դրսևորումներով (Վերածնության ռեալիզմ, Լուսավորական ռեալիզմ, քննադատական ռեալիզմ ևն): Սովետական գրականության և արվեստի ստեղծագործական մեթոդը *սոցիալիստական ռեալիզմն* է, որը ձևավորվեց XX դ. սկզբին՝ պրոլետարական հեղափոխության դարաշրջանում: Մ. գ. պատմականորեն դրսևորվում է տարբեր ուղղությունների, հոսանքների և ոճերի մեջ: *Է. Ջրբաշյան*

**ՄԵԹՈԴԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, փիլիսոփայական ուսմունք *մեթոդի* մասին, որն ընդգրկում է գիտելիքի կառուցվածքի վերլուծությունը, նրա ձեռքբերման փուլերի և եղանակների ուսումնասիրությունը, դրանց հիմնավորումը և ճանաչողական-էվրիստիկական արժեքի վերհանումը: Ըստ մեթոդաբանական *վերլուծության* բնագավառի, գիտության ընդհանուր Մ-ից սովորաբար տարբերակում են որևէ կոնկրետ գիտության (օրինակ, ֆիզիկայի) Մ.: Մեթոդաբանական հետազոտությունները սկսվում են Պլատոնից և Արիստոտելից: Վերջինս լեզվական հյուսվածքում առանձնացրեց կշռադատության տրամաբանական ձևերը, որոնց միջոցով ձեռք է բերվում և որոնց մեջ կաղապարվում է գիտելիքը, տվեց դեդուկտիվ գիտությունների (թվաբանության ու երկրաչափության) Մ.: Նոր ժամանակում փորձնական բնագիտության զարգացումը մեթոդաբանական հետազոտությունները կողմնորոշեց դեպի էմպիրիկ ու տեսական գիտելիքների փոխհարաբերության ու դրանց հիմնավորման ուսումնասիրությունը, մի բան, որ անհրաժեշտ դարձրեց գիտելիքի կազմակերպման դեդուկտիվ-ռացիոնալիստական իդեալի կողքին (Ռ. Դեկարտ, Գ. Լայբնից) ինդուկտիվ տրամաբանության և դրան համապատասխան մեթոդաբանության մշակումը (Ֆ. Բեկոն): XVII—XVIII դդ. մեխանիստական, մետաֆիզիկական աշխարհայացքի շրջանակներում ձևավորված Մ. ելնում էր մեխանիկայի օրենքներով գիտելիքներ ձեռք բերելու պատկերացումից (տես *Մեխանիցիզմ*:)։ Այս Մ-յան սահմանափակությունը, գիտության մեջ դիալեկտիկական գաղափարների ներթափանցման կապակցությամբ, առաջինը նկատեց Կանտը՝ «տրանսցենդենտալ մեթոդաբանության» մասին իր ուսմունքում:

Սակայն ոչ՛ Կանտին և ոչ՛ էլ Հեգելին, որը օբյեկտիվ իդեալիզմի դիրքերից քննադատեց Կանտի ուսմունքին հատուկ սուբյեկտիվիզմն ու ագնոստիցիզմը, չհաջողվեց ստեղծել գիտական Մ.: Ավելին, XIX և XX դդ., երբ բնագիտության տեսականացման, գիտության մեջ սկզբունքորեն նոր մեթոդների կիրառության և մաթեմատիկական տրամաբանության հզոր ապարատի ստեղծման կապակցությամբ սկսվեց մեթոդաբանական հետազոտությունների նոր փուլը, Մ-յան վերաբերյալ մեխանիստական հայացքը յուրօրինակ ձևով հարություն առավ պոզիտիվիզմի մեջ: Այն իր նորագույն ձևերում առաջադրեց «տրամաբանականացված գիտության» մի շարք տարբերակներ, որոնց համաձայն գիտելիքի ձեռքբերման, նրա ճշգրտության, օբյեկտիվության, միասնության և զարգացման ներգիտական պայմաններն այնպիսին են, որ ենթադրում են բացառապես ձևական-տրամաբանական նկարագրություն: Նեոպոզիտիվիստական որոշ մեթոդաբանական ուղղություններում փորձ է արվում հաղթահարել այդ դոգման՝ գիտելիքի վերլուծության ժամանակ նկատի ունենալով գիտության պատմությունը, հոգեբանական և հասարակական-մշակութային գործոնները (Կուն, Լակատոս, Ֆեյերբենդ): XIX դ. հայ փիլ-յան մեջ գիտական ճանաչողության մեթոդների վերլուծությունը նշանակալի զարգացում ապրեց, քանի որ բուրժ. հարաբերությունների ներթափանցումը հայ իրականության մեջ հետաքրքրություն և շահագրգռվածություն առաջ բերեց բնական գիտությունների նկատմամբ և, երկրորդ, հայ լուսավորիչների ծրագրերի մեջ մեծ տեղ էր տրվում դրական գիտելիքների տարածմանը: Ժամանակի հայ փիլ. մտքում ներկայացված էին մեթոդաբանական բոլոր հիմնական ուղղությունները. ծայրահեղ ռացիոնալիզմը (Ա. Գուրգենյան, Պ. Էմմանուելյան), որը ձգտում էր գիտությունը համատեղել կրոնական դոգմաների հետ, չափավոր ռացիոնալիստական-դեդուկտիվիստական (Ա. Գարագաշյան), ծայրահեղ էմպիրիստական-ինդուկտիվիստական (Ա. Բագրատունի) ուղղությունները, չափավոր ինդուկտիվիզմը (Գ. Կոստանդյան): Միջին, հաշտվողական դիրք ուներ Ն. Ռուսինյանը:

Իմացության պրոցեսը իր բնույթով դիալեկտիկական է: Ահա թե ինչու միայն հետևողական դիալեկտիկական մոտեցումն է ի վիճակի հաղթահարելու ձևական-տրամաբանական մոտեցման սահմանափակությունը և տալու իմացության պրոցեսի գիտական նկարագիրը: Դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի սկզբունքները միաժամանակ բնագիտական և սոցիալական իմացության մեթոդաբանական սկզբունքներ են, իսկ ինքը՝ մարքսիզմի փիլիսոփայությունը, գիտական իմացության ընդհանուր Մ.:

ՍՍՀՄ-ում բուն իմաստով մեթոդաբանական հետազոտությունները հատկապես ծավալվեցին 60—70-ական թթ., երբ մեծապես օգտագործվեցին գիտելիքի տրամաբանական վերլուծության այն հնարավորությունները, որոնք ընձեռում է մաթ. տրամաբանությունը: Միաժամանակ դիալեկտիկամատերիալիստական Մ-յանը միշտ էլ հատուկ է եղել պատմականության սկզբունքի կիրառումը գիտելիքի վերլուծության մեջ, հասարակական պրակտիկայի դերի հաշվառումը, գիտելիքի դիտարկումը մշակութային ընդհանուր հյուսվածքի մեջ: Այս հունով մեթոդաբանական հետազոտություններ 70-ական թթ. կատարվել են նաև ՀՍՍՀ-ում:

*Գրկ.* Մարքս Կ. և Էնգելս Ֆ., Սուրբ ընտանիք..., Ե., 1967: Էնգելս Ֆ., Բնության դիալեկտիկա, Ե., 1969: Լենին Վ. Ի., Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, Երկ., հ. 14: Նույնի, Փիլիսոփայական տետրեր, Երկ., հ. 38: Маркс К., Нищета философии, Соч., 2 изд., т. 4; Նույնի, Экономические рукописи 1857—1859 годов, նույն տեղում, т. 46, ч. 1; Թանսյան Ա., Հայ տրամաբանական միտքը XIX դարում, Ե., 1976: Ռշտունի Էդ., Գիտական իմացության մեթոդների մշակումը հայ փիլիսոփայու-

թյան մեջ, Ե., 1979: Франк Ф., Философия науки, пер. с англ., М., 1960; Логика научного исследования, М., 1965; Лакатос И., Доказательства и опровержения, пер. с англ., М., 1967; Попович М. В., О философском анализе языка науки, Киев, 1966; Копнин П. В., Логические основы науки, Киев, 1968; Философские вопросы логического анализа научного знания, в. 1—3, Е., 1969—74; Методологические проблемы взаимосвязи и взаимодействия наук, Л., 1970; Философия, методология, наука, М., 1972; Штофф В. А., Введение в методологию научного познания, Л., 1972; Проблемы философии и методологии современного естествознания, М., 1973; Методологические принципы физики, М., 1975; Мостепаненко А. М., Методологические и философские проблемы современной физики, Л., 1977.

*Ա. Մանասյան*

**ՄԵԹՈԴԱԿԱՆ ՎԱՌԱՐԱՆ**, անցումային վառարան՝ մետաղե նախապատրաստուկները *գլոցումից*, *կռումից*, *դրոշմումից* առաջ տաքացնելու համար: Մ. վ-ում նախապատրաստուկները տեղաշարժվում են վառելիքի այրման արգասիքների շարժմանն ընդառաջ: Նման հակահոս շարժման դեպքում հասնում են վառարան մատուցվող ջերմության օգտագործման բարձր աստիճանի: Նախապատրաստուկները հաջորդաբար անցնում են երեք ջերմատեխնիկական գոտիներ. մեթոդական (նախնական տաքացման գոտի), եռակցման (տաքացման գոտի) և մարմանդ տաքացման (նախապատրաստուկում ջերմաստիճանների հավասարեցման գոտի): Մ. վ-ները դասակարգվում են՝ եռակցման գոտում ջեռուցման գոտիների թվով (2-ից 5), նախապատրաստուկների տեղափոխման եղանակով (հրիչ և շարժական հեծաններով), կառուցվածքային առանձնահատկություններով (ներքևից տաքացվող, թեք հատակով ևն): Մ. վ-ները տաքացվում են գազանման կամ հեղուկ վառելիքով, այրիչների կամ բոցամուղների օգնությամբ:




Եռագոտի հրիչ մեթոդական վառարանի ընդհանուր տեսքը. *I*—մեթոդական գոտի, *II*—եռակցման գոտի, *III*—մարմանդ տաքացման գոտի, *1*. հրիչ, *2*. այրիչ, *3*. հովացվող հատակամերձ խողովակներ, *4*. տաքացվող նախապատրաստուկներ, *5*. այրման արգասիքների հեռացման ուղղաձիգ առու, *6*. նախածխանցք, *7*. ռեկուպերատոր, *8*. ծխնելույզ, *9*. օդափոխիչ

**ՄԵԹՈԴՆԵՐ ՈՒՍՈՒՑՄԱՆ**, ուսուցիչների և սովորողների աշխատանքային ձևեր ու եղանակներ (դասախոսություն, զրույց, պատմվածք, աշխատանք դասագրքի վրա, փորձ, դիտում, վարժություն, բնական օբյեկտի և զննական պիտույքների ցուցադրում, աշխատանքային գործողություն ևն), որոնք նպաստում են խոր ու կայուն գիտելիքներ ձեռք բերելուն, անձի ձևավորմանը: Հեղինակների մի մասը Մ. ու. դասակարգում է բանավոր, զննական, գործնական (հիմք ընդունելով գիտելիքի աղբյուրը), իսկ մյուս մասը՝ նոր գիտելիքների հաղորդակից դարձնող, ամրապնդող, գիտելիքներն ստուգող (հիմք ունենալով դիդակտիկայի խնդիրները): Ուսուցման մեթոդների մշակման գործում նշանակալի ազդեցություն է ունենում ուսման պրոցեսում տեխ. միջոցների (կինո, ռադիո, հեռուստացույց, ուսուցանող մեքենա և այլ սարքեր) լայն կիրառումը: (Տես նաև *Ուսուցում*):

**ՄԵԹՈԼ**, պ-մեթիլամինաֆենոլի սուլֆատ,

OH
|
(բենզոլային օղակ)
|
$CH_3-NH\cdot{}^1/_2H_2SO_4$

օրգանական նյութ: Անգույն ասեղնաձև բյուրեղներ են, հալվում են 250°C (քայքայվելով): Սովորական օրգ. լուծիչներում (եթեր, քլորոֆորմ, բենզոլ) չի լուծվում: 100 *գ* ջրում լուծվում է 5 *գ* Մ. (25°C): Օգտագործվում է որպես լուսանկարչական հայտածիչ նյութ:

**ՄԵԺԵԼԱՅՏԻՍ** Էդուարդաս Բենիամինի (ծն. 3.10.1919), լիտվացի սովետական բանաստեղծ, հասարակական և պետական գործիչ: Լիտվական ՍՍՀ ժող. բանաստեղծ (1974), սոցիալիստական աշխատանքի հերոս (1974): ՀՍՍՀ կուլտուրայի վաստ. գործիչ (1976): ՍՄԿԿ անդամ 1943-ից: 1939—40-ին սովորել է Կաունասի և Վիլնյուսի համալսարանների իրավաբանական ֆակուլտետներում: 1943-ին եղել է զինվորական թղթակից: Տպագրվել է 1935-ից: Բանաստեղծությունների առաջին իսկ ժողովածուներում («Քնարերգություն», 1943, «Հայրենիքից փչող քամին», 1946, «Իմ սոխակը», 1952) Մ. իրեն դրսևորել է որպես ազգային պոեզիայի ավանդույթների շարունակող: Մ-ի ստեղծագործության մեջ նշանակալի ուղենիշ եղավ «Եղբայրական պոեմ» (1955) էպիկական գործը: «Մարդը»(1961, լենինյան մրցանակ, 1962, հայ. հրտ. 1965) բանաստեղծությունների ժողովածուն հիմն է մարդ-կոմունիստին: Խոր ինտելեկտուալիզմը, փիլիսոփայականությունն ու հրապարակախոսական պաթոսը Մ-ի «Արևը սաթի մեջ» (1961), «Ինքնանկար: Ավիաէսքիզներ» (1962), «Հարավային համայնապատկեր» (1963) և «Սրտագրություն» (1963) ժողովածուների հիմնական գծերն են: 60—70-ական թթ. Մ. հրատարակել է լիտվական և համաշխարհային արվեստի մասին բանաստեղծական հրապարակախոսություններ («Քնարական էտյուդներ», 1964, «Հաց և խոսք», 1965, «Հորիզոններ», 1970, «Սաթե թռչուն», 1972 ևն): Գրել է նաև մանուկների համար («Ինչ դառնալ», 1947, «Ուսուցչուհին», 1953 ևն): Մ. լիտվերեն է թարգմանել Գրիգոր Նարեկացու, Նահապետ Քուչակի, Հ. Թումանյանի, Ա. Իսահակյանի, Ե. Չարենցի, Պ. Սևակի ստեղծագործություններից, հանդես եկել հայ ժողովրդին, մշակույթին և գրականությանը, Նարեկացուն, Թումանյանին, Իսահակյանին, Սևակին, Մ. Սարյանին նվիրված հոդվածներով: Եղել է Սովետական Հայաստանում: Ունի «Հայաստան» խորագրով բանաստեղծությունների շարք: 1959—70-ին՝ Լիտվական ՍՍՀ ԳՄ վարչության նախագահ, 1959-ից՝ ՍՍՀՄ ԳՄ վարչության քարտուղար, 1960-ից՝ Լիտվայի կոմկուսի Կենտկոմի անդամ: ՍՍՀՄ VI—VII գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Ջ. Ներուի անվ. մրցանակի դափնեկիր (1969): Պարգևատրվել է Լենինի և այլ շքանշաններով:

*Երկ.* Քարե գինի, Ե., 1980:



Է. Մեժելայտիս

**ՄԵԺԻՐՈՎ** Ալեքսանդր Պետրովիչ (ծն. 1923, Մոսկվա), ռուս սովետական բանաստեղծ: ՍՄԿԿ անդամ 1943-ից: Հայրենական մեծ պատերազմի մասնակից: Հայտնի է որպես զինվորական թեմաներով գրող բանաստեղծ («Ճանապարհը հեռու է», 1947, «Վերադարձ», 1955, բանաստեղծությունների ժողովածուներ): «Հողմապակի» (1961), «Լադոգայի սառույցը» (1965), «Պայտ» (1967), «Ուշ բանաստեղծություններ» (1971) և այլ ժողովածուներում Մ-ի լիրիկան հիմնականում փիլիսոփայական բնույթ ունի:

**ՄԵԺԼՈՒՄՅԱՆ** Արտաշես Մարտիրոսի [ծն. 9(22).11.1901, գ. Նովրուզլու (այժմ՝ ք. Արտաշատի տարածքում)], ՀՍՍՀ վաստակավոր անասնաբույծ, կոլտնտեսային շարժման գործիչ: Սոցիալիստական աշխատանքի հերոս (1953): ՍՄԿԿ անդամ 1927-ից: Ավարտել է Երևանի անասնաբուծականանասնաբուժական ինստ-ը (1937): 1924—1931-ին աշխատել է ՀՍՍՀ Ղամարլուի (այժմ՝ Արտաշատ) շրջանում որպես Այգեգործների և «Չիգդամլու» կոոպերատիվ գյուղատնտ. ընկերությունների վարչության նախագահ: 1952—71-ին եղել է Շահումյանի շրջանի XXII համագումարի անվ. կոլտնտեսության վարչության նախագահ: Մ-ի ղեկավարությամբ կոլտնտեսությունը ձեռք է բերել արտադրական բարձր ցուցանիշներ, որի համար նա արժանացել է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման: Պարգևատրվել է Լենինի, «Պատվո նշան» շքանշաններով, Համամիութենական գյուղատնտ. ցուցահանդեսի և ԺՏՆՑ-ի ոսկե մեծ և արծաթյա մեծ (2) մեդալներով: ՍՍՀՄ V գումարման Գերագույն սովետի դեպուտատ:

**ՄԵԺԼՈՒՄՅԱՆ** Ռաֆիկ Արտաշեսի [ծն. 12 (25).11.1914, Արագյուղ (այժմ՝ ՀՍՍՀ Նաիրիի շրջանում)], հայ սովետական մեխանիկ: Ֆիզմաթ գիտ. դ-ր (1954), պրոֆեսոր (1967): ՍՄԿԿ անդամ 1945-ից: Ավարտել է Ն. Ժուկովսկու անվ. ռազմաօդային ակադեմիան (1941): 1941—63-ին ծառայել է

սովետական բանակում: 1964-ից դասախոսում է քաղաքացիական ավիացիայի պետ. ԳՀԻ-ում (Մոսկվա): Աշխատանքները վերաբերում են աերոդինամիկայի, թռիչքի դինամիկայի, թռչող սարքերի կառավարման, պլաստիկության տեսության, թռիչքի անվտանգության հարցերին:

**ՄԵԼԱՄԱՂՁՈՒԹՅՈՒՆ**, մ ե լ ա ն խ ո լ ի ա [< հուն. μέλας(μέλανος)— սև, χολή— լեղի], հոգեկան խանգարում. բնորոշվում է տրամադրության անկմամբ, հոգեկան պրոցեսների դանդաղումով: *Ընկճվածության* հին անվանումը: Մ-յան ծագումը Հիպոկրատը բացատրում էր «սև լեղիով» օրգանիզմի թունավորմամբ:

**ՄԵԼԱՄԻՆ**, $C_3H_6N_6$, 1, 3, 5-եռամինա-2, 4, 6-եռազին, հետերոցիկլային միացություն է: Մ-ի անգույն բյուրեղները հալվում են 354°C-ում, քայքայվելով: Գործնականորեն չի լուծվում սառը ջրում և բազմաթիվ օրգ. լուծիչներում: Հիմք է, թթուների հետ առաջացնում է աղեր ($C_3H_6N_6 \cdot HCl$ ևն):

$NH_2$
C 1
$N_6$ 2N
$C_5$ 4 N 3C
$H_2N$ $NH_2$

Օգտագործվում է *մելամինմրջնալդեհիդային խեժերի*, իոնափոխանակիչ խեժերի, դաբաղանյութերի, ներկանյութերի և *հերբիցիդների* արտադրության մեջ: Մ. ստանում են երկցիանդիամիդը ($(NH_2—C\equiv N)_2$), բարձր ճնշման տակ (4—20 *Մն/մ²*) տաքացնելով (180—500°C):

**ՄԵԼԱՄԻՆՄՐՋՆԱԼԴԵՀԻԴԱՅԻՆ ԽԵԺԵՐ**, սպիտակ, ամորֆ սինթետիկ նյութեր, որոնք ստացվում են *մելամինի* և *մրջնալդեհիդի* պոլիկոնդենսմամբ: Սինթեզն իրականացվում է երկու փուլով՝ նախ ստացվում են մելամինի մեթիլոլային ածանցյալները (pH=8,5, 80—90°C), իսկ հետագա պոլիկոնդենսումը տարվում է թթվային միջավայրում (50—60°C): Մ. խ-ին ջրակայունություն, պլաստիֆիկատորների հետ խառնվելու և օրգ. լուծիչներում լուծվելու հատկություններ հաղորդելու համար մեթիլոլային խմբերը էթերացնում են (հիմնականում բութանոլով և մեթանոլով): Մ. խ. պնդանում են թույլ թթվային կատալիզատորների առկայությամբ: Կիրառվում են պլաստմասսայի, կարբամիդային սոսնձի, լաքերի ևն ստացման համար:

**ՄԵԼԱՆ** (< հուն. μέλαν — սև ներկ, թանաք), տես *Թանաք*:

**ՄԵԼԱՆԵԶԻԱ** (հուն. μέλας— սև և νῆσος — կղզի), Օվկիանիայի կղզիախմբերից մեկը Խաղաղ օվկիանոսի հարավ-արևմտյան մասում: Երկարությունը մոտ 5000*կմ* է: Գլխավոր կղզիներն ու խմբերն են. Նոր Գվինեան, Ֆիջին, Բիսմարկի արշիպելագը, Սողոմոնյան, Նոր Հեբրիդյան, Նոր Կալեդոնյան: Տարածությունը 956,3 հզ. *կմ²* է, բնակչությունը՝ մոտ 4 մլն (1980)՝ պապուասներ, մելանեզիացիներ, միկրոնեզիացիներ: Ֆիջի կղզին անկախ պետություն է, Պապուա Նոր Գվինեան՝ ինքնավար տերիտորիաներ: Նոր Գվինեայի արմ. մասը (Արևմտյան Իրիան) պատկանում է Ինդոնեզիային, մնացած կղզիները Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի և Ավստրալիայի տիրույթներ են: Կղզիներն ունեն մայրցամաքային և հրաբխային ծագում, լեռնային մակերևույթ (բարձրությունը՝ մինչև 5029 *մ*, Նոր Գվինեա կղզում): Կազմված են բյուրեղային, փոխակերպված և նստվածքային ապարներից: Ծանծաղուտներում շատ են կորալային խութերը: Առկա է ժամանակակից հրաբխականությունը, հաճախակի են երկրաշարժերը: Կլիման հասարակածային և մերձհասարակածային է, հվ. կղզիներում՝ արևադարձային: Գետային ցանցը խիտ է: Հս. կղզիները ծածկված են հասարակածային անտառներով: Շատ են էնդեմիկ տեսակները: Կենդանական աշխարհը մոտ է ավստրալիականին: Կան կոկոսյան արմավենու, կաուչուկատունների, շաքարեղեգի, կակաոյի, սուրճի պլանտացիաներ: Զբաղվում են անասնապահությամբ ու ձկնորսությամբ: Կա փայտամթերում, խեցիների ու սաղափի որս և հավաք, նիկելի, կոբալտի, քրոմի, մանգանի, ոսկու հանույթ:

**ՄԵԼԱՆԵԶԻԱՑԻՆԵՐ**, ազգակից ժողովուրդների խումբ, *Մելանեզիայի* արմատական բնակչությունը: Թիվը՝ մոտ 1,1 մլն (1978): Խոսում են մելանեզական լեզուներով: Պատկանում են մելանեզական ռասային: Մ. ձևականորեն քրիստոնյաներ են, բայց նրանց մոտ պահպանվում են տեղական հին հավատալիքների զգալի վերապրուկներ: XIX դ. սկզբին գտնվում էին նախնադարյան համայնակարգի քայքայման զանազան փուլերում: Հմուտ նավաշինարարներ և ծովագնացներ էին: Մ. զբաղվում են հողագործությամբ և ձկնորսությամբ: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Մ. ծավալեցին ազգային-ազատագրական շարժում գաղութարարների դեմ: Խոշոր քաղաքներում ձևավորվում է բանվոր դասակարգը: Ուժեղացել է նախկինում առանձնացված խմբերի էթնիկական համախմբումը:

**ՄԵԼԱՆԵԶՅԱՆ ԼԵԶՈՒՆԵՐ**, տես *Մալայա-պոլինեզյան լեզուներ*:

**ՄԵԼԱՆԺԻ ԳՈՐԾՎԱԾՔ**, տարբեր գույնի ներկած թելերի խառնուրդի հյուսվածքի՝ մելանժի (< ֆրանս. mélange — խառնուրդ) միաթել կամ ոլորված մանվածքից պատրաստված գործվածք: Երփներանգ գործած կամ ներկած գործվածքներից Մ. գ. տարբերվում է գունային յուրահատուկ էֆեկտով: Բամբակե Մ. գ. մշակելիս գունազրկման չեն ենթարկում, քանի որ դա փչացնում է թելերի գունավորումը: Գունազրկման պրոցեսը հիմնականում հանգեցվում է գործվածքների մեխանիկական մշակման (խավատում, խավավորում ևն) և *ապրետավորման*: Բրդե Մ. գ-ի մշակումը չի տարբերվում գործվածքների սովորական մշակումից: Բամբակե Մ. գ-ներից առավելապես հայտնի են տրիկոն, շևիոտը, դիագոնալը, կովերկոտը, մախուդը: Բրդե Մ. գ-ների անվանումը կազմվում է այս անվանումներին «մելանժ» բառը ավելացնելով: Օրինակ, մախուդ-մելանժ, դրապ-մելանժ:

**ՄԵԼԱՆԻՆՆԵՐ** (< հուն. μέλας — սև), ջրում չլուծվող, դարչնագույն, սև կամ դեղին *պիգմենտներ*: Լայնորեն տարածված են կենդանական և բուսական հյուսվածքներում. պայմանավորում են արտաքին ծածկույթների՝ ողնաշարավորների մաշկի, մազերի, փետուրների, թեփուկների, միջատների կուտիկուլայի, որոշ մրգերի կեղևի ևն գունավորումը: Օրգանիզմում առաջանում են տիրոզին ամինաթթվից՝ տիրոզինազ ֆերմենտի օգնությամբ: Մ-ի քիմ. կառուցվածքը պարզված չէ:

**ՄԵԼԱՆԻՏ**, տես *Նռնաքարեր*:

**ՄԵԼԱՆՈԿՐԱՏ ԱՊԱՐՆԵՐ** (< հուն. μέλας— սև, մուգ և κράτος — ուժ, իշխանություն), *մագմատիկ ապարներ*, որոնք մուգ գույնի միներալներ (Fe-ով և Mg-ով հարուստ, օրինակ՝ *պիրոքսեններ*, *ամֆիբոլներ*, *բիոտիտներ*) պարունակում են ավելի մեծ քանակությամբ, քան տվյալ ապարի նորմալ միջին տիպը: Մ. ա. հակադրվում են *լեյկոկրատ ապարներին*, որոնք աչքի են ընկնում մուգ գույնի միներալների նվազ պարունակությամբ:

**ՄԵԼԱՆՈՄԱ**, մ ե լ ա ն ո բ լ ա ս տ ո մ ա, *մելանիններ* արտադրող բջիջների չարորակ ուռուցք: Պատճառները վնասվածքներն ու հորմոնային խթանումներն են՝ հատկապես սեռական հասունացման շրջանում: Հիմնականում տեղադրվում է մաշկում, հազվադեպ՝ աչքի անոթաթաղանթում, գլխուղեղի և ողնուղեղի փափուկ թաղանթներում, քիթըմպանում, կոկորդում, կերակրափողում, աղիքների լորձաթաղանթում ևն: Սովորաբար զարգանում է գունակային կամ գունակազուրկ բնածին խալերի տեղում: Մաշկի առաջնային Մ. սկսվում է հազիվ նկատելի կամ գորտնուկանման (դարչնագույն, սև, կապտակարմրավուն) ուռուցքի առաջացմամբ, որը երբեմն խոցոտվում է և արյունահոսում: Վնասվելիս ուռուցքը կարող է արագ մեծանալ, դառնալ թմբիկավոր (պինդ հիմքով) և շարժունությունը կորցնել: Հաճախ կարող է մետաստազներ արձակել ավշահանգույցներում և ներքին օրգաններում: Բնածին խալը Մ-ի վերածվելու նշաններն են. խալի մեծացումը, կոշտացումը, գունակավորման ուժեղացումը կամ թուլացումը, շուրջը կարմրության առաջացումը:

Բ ու ժ ու մ ը. ժամանակակից վիրաբուժական միջամտություն՝ հիմնված վաղ ախտորոշման վրա, ճառագայթային թերապիա:

Մ. ա չ ք ի, ընդգրկում է ծիածանաթաղանթը, թարթչային մարմինը և անոթաթաղանթը: Ընթացքը համեմատաբար բարորակ է: Ա խ տ ա ն շ ա ն ն ե ր ը. տեսողության խանգարում, ծիածանաթաղանթի վրա մուգ գոյացության առաջացում, ներակնային ճնշման բարձրացում, ցավեր, արյունազեղում: Բ ու ժ ու մ ը՝ վիրահատական:

**ՄԵԼԱՐԵՆ** (Mälaren), լիճ Շվեդիայի միջին մասում: Մակերեսը՝ 1140 *կմ²*, երկարությունը՝ մոտ 120 *կմ*, խորությունը՝ ավելի քան 60 *մ*: Գտնվում է տեկտոնա-սառցադաշտային ծագում ունեցող գոգավորությունում, ծովի մակերևույթից 0,3—0,6 *մ* բարձրության վրա: Ափերը կտրտված են, ունի մոտ 1200 կղզի: Վտակներով և ջրանցքներով միացած է Բալթիկ ծովի և Ելմարեն լճի հետ: Նավարկելի է: Մ-ի արլ. ափի մոտ է Ստոկհոլմ քաղաքը:

**ՄԵԼԲԱ** (Melba) Նելլի (իսկական անունը և ազգանունը՝ Հելեն Պորտեր Ա ր մ ս թ ր ո ն գ, օրիորդական ազգանունը՝ Միտչել, 1861—1931), ավստրալացի երգչուհի (կոլորատուրային սոպրանո):

Ազգությամբ՝ շոտլանդուհի: 1887-ից ելույթներ է ունեցել Եվրոպայի, Ամերիկայի, Ավստրալիայի խոշորագույն օպերային թատրոններում, այդ թվում՝ «Գրանդ օպերա» [1889, Շ. Գունոյի ղեկավարությամբ պատրաստել է Մարգարիտի («Ֆաուստ») և Ջուլիետի («Ռոմեո և Ջուլիետ») դերերգերը], «Լա Սկալա» (1893), «Մետրոպոլիտեն օպերա» (1893), 1891-ին երգել է Մարիինյան (Պետերբուրգ) թատրոնի բեմում: 1926-ին թողել է բեմը, վերադարձել Ավստրալիա, ընտրվել Մելբուռնի կոնսերվատորիայի պրեզիդենտ:

Գրկ. Hetherington I., Melba. A Biography, L., 1967.

**ՄԵԼԲՈՒՌՆ** (Melbourne), քաղաք Ավստրալիական Միությունում (1901—1927-ը՝ մայրաքաղաք), Վիկտորիա նահանգի վարչական կենտրոնը: Գտնվում է Պորտ Ֆիլիպ ծոցի ափին, Յարայի գետաբերանում: 2718 հզ. բն. (1978): Երկաթուղային և օդային հաղորդակցության հանգույց է, խոշորագույն նավահանգիստ: Տալիս է նահանգի արդ. արտադրանքի մոտ 2/3-ը: Նավաշինական, նավանորոգման, ավտոմոբիլաշինական, հաստոցաշինական, գյուղատնտ. մեքենաշինության, ռազմ. և ավիացիոն, սննդի, տեքստիլ, կոշիկի արդյունաբերության կենտրոն է: Մ-ի մոտակայքում արդյունահանվում է գորշ ածուխ: Ունի համալսարան (1853), կոնսերվատորիա, աստղադիտարան: Կան թանգարաններ: 1956-ին Մ-ում տեղի են ունեցել XVI ամառային օլիմպիական խաղերը: Մ. բաղկացած է գործարար կենտրոնից, բնակելի թաղամասերից և արդ. շրջանից: Հիմնադրվել է XIX դ. 30-ական թթ.:

XIX դ. 2-րդ կեսին Ավստրալիա եկած հայերի մի մասը բնակություն է հաստատել Մ-ում: Սակայն Մ-ի հայ համայնքը ստվարացել է առաջին և, հատկապես, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո: 1966-ին Մ-ում բնակվում էր 1500, 1976-ին՝ 4500, 1981-ին՝ շուրջ 7 հզ. հայ: Հայերը զբաղվում են առևտրով, արհեստներով, կան պետ. ծառայողներ ու մտավորականներ: Մ-ում գործում են Ս. Աստվածածին եկեղեցին (կից մեկօրյա դպրոցով), Եկեղեցասեր տիկնանց միությունը, ՀԲԸՄ մասնաճյուղը ևն: Լույս են տեսնում «Հույս», «Ակնոց» պարբերականները: Տես նաև *Ավստրալիական Միություն*, Հայերը Ավստրալիական Միությունում մասը:

**ՄԵԼԳՈՆՅԱՆ (ՄԵԼՔՈՆՅԱՆ) ԿՐԹԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹՅՈՒՆ**, հիմնվել է 1924-ին, Նիկոզիայում (Կիպրոս), Գրիգոր և Կարապետ Մելքոնյանների կտակով, ՀԲԸՄ հովանավորությամբ: Պաշտոնապես բացվել է 1926-ին: Սկզբում որբանոց-նախակրթարան էր՝ 4 դասարանով, 6—13 տարեկան երկսեռ երեխաների համար: 1927-ից աստիճանաբար վերածվել է բարձրագույն նախակրթարանի, 1934-ից՝ լրիվ միջնակարգ (երկրորդական) գիշերօթիկ վարժարան՝ առանց նախակրթարանի: 1940-ին Կիպրոսի կառավարությունը ճանաչել է որպես բարձրագույն երկրորդական վարժարան: Մ. կ. հ. ունի ճեմարանական բաժին, որտեղ ընդունվում են նախակրթարաններն ավարտողները և անցնում քառամյա դասընթաց, առևտրական (1938) և գիտական (1949) բաժիններ, որոնցում մասնագիտանում են ճեմարանական բաժին ավարտողները (2 տարի): Այստեղ սովորում են Մերձավոր ու Միջին Արևելքի և այլ երկրներից եկած հայ պատանիներ ու աղջիկներ (1980-ին՝ 235 աշակերտ): Հաստատությունն ունի քիմիայի, ֆիզիկայի, բնագիտական, կենսբ. լաբորատորիաներ, հարուստ գրադարան: 1937—1979-ը հրատարակել է «Այգ» դպրոցական տարեգիրքը, այժմ լույս է տեսնում «Ցոլք» պարբերականը, գործում է երգչախումբը: Մ. կ. հ. զբաղեցնում է 18,7 *հա* տարածություն, ունի 2 եռահարկ ուս. շենք, հիվանդանոց, բնակելի շենքեր, լողավազան, մարզադաշտեր, պարտեզներ ևն: Տնօրեններ են եղել Լ. Թաշճյանը, Գ. Կիրակոսյանը, Հ. Թոփչյանը, Դ. Ոսկյանը, Բ. Եղյանը, Խ. Գալուստյանը, Ա. Պետոյանը, 1977-ից՝ Ս. Պետիկյանը: Տարբեր տարիներ դասավանդել են Հ. Օշականը, Բ. Կանաչյանը, Վ. Թեքեյանը, Պ. Գնորգյանը և ուրիշներ: Մ. կ. հ. սերտ կապ է պահպանում մայր հայրենիքի հետ, ստանում դասագրքեր, լաբորատոր սարքավորումներ ևն: Նրա շատ շրջանավարտներ ուսումը շարունակում են Երևանի բուհերում:

*Շ. Վարսյան*

**ՄԵԼԵՔՅԱՆ** Հարություն Ռուբենի [ծն. 25.11.1925, գ. Նիժնի Շիլովկա (Կրասնոդարի երկրամասում)], Սովետական Միության հերոս (27.6.1945), կրտսեր լեյտենանտ: Ավարտել է Կրասնոդարի հրաձգային-հրետանային ուսումնարանը (1944): 1944-ի հուլիսից Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերի կազմում, որպես հրաձգային դասակի հրամանատար, մասնակցել է Արևմտյան Ուկրաինայի և Լեհաստանի ազատագրմանը, ֆաշիստական Գերմանիայի ջախջախմանը: Աչքի է ընկել Սանդոմիրյան հենակետի (Լվովի մոտ) և Չենստոխովա (Լեհաստան) քաղաքի համար մղված մարտերում: Հերոսի կոչմանն արժանացել է 1945-ի հունվարին, Օդերի գետանցման, նրա ձախ ափին հենակետ գրավելու և այն ընդարձակելու համար: Մասնակցել է նաև Բեռլինի և Պրագայի գրավմանը: Պատերազմից հետո աշխատանքի է անցել Սոչիում: *Ք. Գրիգորյան*

**ՄԵԼԵՔՅՈՅ ԳԵՂ**, գյուղ Տրապիզոնի վիլայեթում, Սամսոն գավառի Չարշամբա գավառակում: 1915-ին ուներ 18 տուն հայ բնակիչ, բոլորը՝ Համշենից գաղթած Մելեքյան տոհմից (որի անունով էլ կոչվում էր գյուղը): Մ. գ-ի բնակիչների գլխավոր զբաղմունքը կանեփի մշակումն էր: Գյուղի դպրոցահասակ երեխաները հաճախում էին մոտակա Յայլաճող գյուղի դպրոցը: Բնակիչները զոհվել են 1915-ին, թուրք. կառավարության կազմակերպած ջարդերի ժամանակ: *Բ. Թոռլաքյան*

**ՄԵԼԻԱՍ** (Μελίας), Մլեհ Մեծ (ծն. թ. անհտ.—934), հայազգի բյուզանդական ռազմական գործիչ: Հավանաբար եղել է պավլիկյան և Վասիլ I-ի կողմից պավլիկյանների հալածանքների ժամանակ ապաստանել է Մելիտենեի արաբների մոտ: Ներում ստանալով Լևոն VI-ից, վերադարձել է և 917-ին մասնակցել բուլղարների ցար Սիմեոնի դեմ պատերազմին: Այնուհետև նշանակվել է Եփրատիա գավառի (Տիվրիկի շրջան) տուրմարք (վարչական շրջանի զինվորական հրամանատար, 3 տուրման կազմում էր մեկ բանակաթեմ): Գրավել է Լիկանդոս ամրոցը, այդտեղ հիմնել կլեյսուրարքություն (վարչական փոքր շրջան, 3 կլեյսուրան կազմում էր մեկ տուրմա), ապա՝ բանակաթեմ և դարձել նրա առաջին զորավարը: Հիմնել է նաև Ծամնդավի (Ցամանդոս) կլեյսուրարքությունն ու Սյումպոսիոնի (Սոբես) տուրմարքությունը, ստացել մագիստրոսի պատվաստիճան: Մ-ի կերպարն արտացոլվել է «Դիգենիս Ակրիտաս» բյուզ. էպոսում (Մելեմենձիս՝ Մլեհ Մեծ): *Հ. Բարթիկյան*

**ՄԵԼԻԵ** (Meslier) Ժան (1664—1729), ֆրանսիացի մատերիալիստ փիլիսոփա, աթեիստ, ուտոպիստ կոմունիստ: 1689-ից եղել է գյուղական քահանա: Մ-ի հայացքները շարադրված են «Կտակ» աշխատությունում (հրտ. 1864): Մ. առաջինն էր, որ մեխանիստական մատերիալիզմը հանգեցրեց մարտնչող մատերիալիզմին, փորձեց նրան հաղորդել սոցիալ-քաղաքական արմատականություն՝ դառնալով XVIII դ. ֆրանս. մատերիալիզմի նախահայրը: Մատերիայի և նրա բացարձակ կեցության ու ինքնաշարժման կարողություն ունենալու գաղափարից Մ. բխեցնում է իրականության վերաբերյալ կրոնական պատկերացումների մերժումը: Մ. խիստ քննադատել է սոցիալական անհավասարության ու անարդարության վրա հիմնված հասարակարգը, որի հիմքը համարում էր մասնավոր սեփականությունը: Անհավասարության ու բռնության դեմ զինված պայքարը նա համարում է օրինական ու բարոյական հեղափոխությունը, ըստ Մ-ի, ժողովրդի գործն է, նրա ազատագրության, մասնավոր սեփականության վերացման միակ միջոցը: Մ. բռնության հաղթահարումը զուգորդում էր կրոնի հոգևոր բռնության հաղթահարման անհրաժեշտության հետ: Մարտնչող մատերիալիզմի դիրքերից նա մերժեց կրոնի հիմնական դոգմաները, վեր հանեց կրոնի սնանկությունը, նրա սոցիալ-քաղաքական հետադիմական էությունը, ցույց տվեց, որ պետությունն ու եկեղեցին ժողովրդի նյութական և հոգևոր կեղեքման գործիք են: Մ-ի պատկերացմամբ սոցիալական անհավասարությունները, մարդկանց հոգեվոր-բարոյական ճնշվածությունը կվերանան ապագա կոմունիստական հասարակարգում, ուր կիշխի սերը, եղբայրությունը, խաղաղությունն ու փոխօգնությունը:

Գրկ. Գնորգյան Ա., Ժան Մելյեի մատերիալիզմը, Ե., 1972: Поршнев Б. Ф., Мелье, [1664—1729], М., 1964; Ям К. Е., Жан Мелье и французский атеизм XVIII века, М., 1979. *Ա. Գնորգյան*

**ՄԵԼԻԶՄՆԵՐ** (հուն. μέλισμα — երգ, եղանակ, մեղեդի), 1. միջին դարերում Մ. են անվանել վոկալ ստեղծագործության մեջ խոսքերի մեկ վանկով երգվող, հանպատրաստից գոյացող մեղեդիական դարձվածքները: 2. Տես *Զարդհնչյուններ*:

**ՄԵԼԻՆԻՏ**, տես *Տրինիտրոֆենոլ*:

**ՄԵԼԻՈՐԱՑԻԱՅԻ ԵՎ ՋՐԱՅԻՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՍՀ**, մելիորացիայի, ոռոգման, ջրարբիացման, չորացման համակարգերի, ջրամբարների և ջրատնտեսական պետական այլ կա-

ռույցների շահագործման ղեկավարումն իրականացնող պետական մարմին: Կազմակերպվել է 1966-ին: 1920—22-ին գործել է հողերի բարելավման (ջրային) բաժին, 1922-ից՝ ենթարկվել Անդրկովկասի ջրային տնտեսության վարչությանը: 1925-ին կազմակերպել է ՀՍՍՀ ջրային տնտեսության վարչություն («Հայջրտնտեսություն»), որը 1933-ին վերակազմվել է ՀՍՍՀ հողժողկոմատի ջրային վարչության: 1940-ին վարչությունը վերածվել է Ջրային տնտեսության ժողկոմատի, իսկ 1946-ին՝ մինիստրության: 1953-ին լուծարքվել է և ընդգրկվել ՀՍՍՀ գյուղատնտեսության և մթերումների մինիստրության կազմի մեջ, որպես Ջրային տնտեսության գլխավոր վարչություն: 1954-ին ՀՍՍՀ ջրային տնտեսության մինիստրությունը վերակազմակերպվել և 1966-ին անվանվել է ՀՍՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրություն: Ներառնում է ոռոգման, ոռոգման և ջրարբիացման համակարգերի շահագործման գլխավոր վարչությունը, կապիտալ շինարարության, մեքենայական ոռոգման, պլան-ֆինանսական վարչությունները, 7 բաժին՝ մեքենայացման ու տրանսպորտի, կոմպլեկտավորման ու նյութական ֆոնդերի, վերստուգման ու վերահսկման ևն: Մինիստրությանը ենթարկվում են նաև ստորերկրյա ջրերի (1), ոռոգման, ոռոգման և ջրարբիացման համակարգերի (37) և ջրհան կայանների (6) վարչություններ, շարժական մեքենայացման 4 շարասյուն, Ջրային պրոբլեմների և հիդրոտեխնիկայի ԳՀԻ-ն ևն:

Հայջրտնտեսության և ՀՍՍՀ հողժողկոմատի ջրային վարչության պետ են եղել Ս. Շաղունցը (1924—27), Հ. Պետրոսյանը (1927—28), Կ. Այվազյանը (1928—1934), Ն. Դանիելյանը (1934—36), Մ. Մարգարյանը (1936—37), Ա. Մելիքջանյանը (1937—38), Գ. Աղախանյանը (1938—40, 1940—46-ին՝ ժողկոմ, 1946—53-ին՝ մինիստր), մինիստր՝ Գ. Բաղրամյանը (1954—77, 1953—54-ին՝ գլխավոր վարչության պետ): 1977-ից մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստր է Ռ. Շահոյանը:

*Գ. Աղախանյան*

**ՄԵԼԻՈՐԱՑԻՈՒՄ ԿԼԻՄԱՅԻ** (< լատ. melioratio — բարելավում), կլիմայի բարելավում, միջոցառումների համալիր, որի նպատակն է կլիման փոխել մարդուն անհրաժեշտ ուղղությամբ (օրինակ՝ որևէ շրջանում բնակչության կենսապայմանների բարելավման, գյուղատնտեսության առանձին ճյուղերի զարգացման համար ևն): Գիտության և տեխնիկայի ժամանակակից մակարդակի պայմաններում Մ. կ. կարող է կատարվել միայն համեմատաբար ոչ մեծ տարածքում և առավելապես մթնոլորտի մերձերկրյա շերտերում: Կլիմայի մելիորացման նախատեսվող եղանակներից են մթնոլորտի վերին շերտերի փոշեցրումը, օվկիանոսներում ամբարտակների կառուցմամբ օվկիանոսային հոսանքների ռեժիմի փոփոխումը, ատոմային էներգիայի կիրառումը, բևեռային սառույցների վերացումը ևն, որոնց մի մասը տեխ. տեսակետից կարելի է իրականացնել ոչ հեռավոր ապագայում: Սակայն, գիտության ժամանակակից մակարդակով հնարավոր չէ նախատեսել այս կամ այն միջամտության բոլոր հնարավոր հետևանքները կլիմառաջացնող պրոցեսների ընթացքի վրա: Այդ իսկ պատճառով անհրաժեշտ է պահպանել Երկրի վրա գոյություն ունեցող կլիմայական պայմանները և սահմանափակել դրանց վատացման տենդենցները, որոնք պայմանավորված են բնական պրոցեսներին մարդու միջամտությամբ:

**ՄԵԼԻՈՐԱՑԻՈՒՄ ՀՈՂԻ**, հողաբարելավում, հողերն արմատապես բարելավող կազմակերպական տնտեսական և տեխնիկական միջոցառումների համալիր: Փոխելով բնական պայմանների (հողային, կլիմայական, ջրաբանական ևն) համալիրը՝ հնարավոր է փառնայի ու ֆլորայի համար ստեղծել ջրա-ջերմային, օդային, սննդային ևն լավագույն ռեժիմներ: Մ. հ. կարևոր է գյուղատնտ. հողատեսքերի արտադրողականության բարձրացման գործում, այն գյուղատնտ. արտադրության ինտեսիվացման անհրաժեշտ գործոն է, արմատական և կայուն միջոցառում: Ի տարբերություն հողերի բերրիության բարձրացման ագրոտեխնիկական այլ միջոցառումների, Մ. հ. ազդեցությունը երկարատև է կամ մշտական: Այն առավել արդյունավետ է, երբ կիրառվում է կուլտուրտեխնիկական աշխատանքների և երկրագործական այլ միջոցառումների հետ: Ժամանակակից Մ. հ. համար բնորոշ է մեծ հողազանգվածների ընդգրկումը: Նման պայմաններում վճռական նշանակություն ունի գիտականորեն հիմնավորված միջոցառումների ընտրությունը, որ այն բացասական ազդեցություն չունենա բնական պայմանների վրա (օրինակ, ոչ ճիշտ ոռոգումը կարող է առաջացնել հողերի աղակալում, ճահճացում, հողատարում, իսկ ստորերկրյա ջրերի մակարդակի չհիմնավորված իջեցումը՝ տեղանքի գերչորացում ևն):

Առավել տարածված է անբարենպաստ ջրա-ջերմային ռեժիմ, ագրո-ֆիզիկական վատ հատկանիշներ ունեցող հողերի մելիորացումը: Ճահճացած և գերխոնավացած հողերը բարելավում են չորացման աշխատանքներով՝ բաց ջրանցքների և ցամաքուրդների միջոցով, որի շնորհիվ նպաստավոր պայմաններ են ստեղծվում հողի ջրա-ջերմային ռեժիմի բարելավման ու օրգ. նյութերի քայքայմանը նպաստող աերոբ պրոցեսների խթանման համար: Կլիմայական չոր պայմաններում (երբ գոլորշիացումը գերակշռում է տեղումների քանակին) հողի խոնավության պաշարները լրացնում են արհեստական ոռոգմամբ՝ ստեղծելով բաց և փակ ոռոգման համակարգեր, ինչպես նաև ջրամբարների և մի շարք հիդրոտեխնիկական կառույցների օգնությամբ կուտակում գետերի և տեղումներից առաջացած ջուրը: Անապատային, կիսաանապատային և տափաստանային գոտիներում, որտեղ զարգացած է անասնապահությունը, արոտավայրերը ջրարբիացնում են: Տարածքի ջրային անբարենպաստ ռեժիմը կարգավորող միջոցառումները կոչվում են հիդրոտեխնիկական կամ ջրային Մ. հ.: Ագրոֆիզիկական և ֆիզիկա-քիմիական աննպաստ հատկանիշներով հողերի համար կիրառվում է ագրոտեխնիկական և քիմիական Մ. հ.: Անապատատափաստանային գոտում զարգացող աղակալած և աղուտ հողերը բարելավում են լվացումներով և մի շարք քիմ. միացությունների (գիպս, կալցիումի քլորիդ, երկաթի սուլֆատ, ծծմբական թթու ևն) օգտագործմամբ, որոնք նպաստում են հողից սոդայի հեռացմանը: Թթու հողերի բերրիությունը բարձրացնում են կրացման միջոցով: Ամրացած ենթավարելաշերտով հողերում ավելացնում են վարի խորությունը, անհարթ մակերես ունեցող տարածքը պլանավորում են: Էրոզիայի ենթակա հողերի բարելավումը ներառում է մակերեսային ջրերի ու քամու միջոցով հողերի ողողման և տարման կանխարգելիչ, ինչպես նաև սորուն ավազի, փլուզումների, հեղեղատների առաջացման դեմ պայքարի միջոցառումներ: Էրոզացված հողերը բարելավելու նպատակով կրճատում են մակերեսային հոսքերի քանակն ու արագությունը, մեծացնում հողի դիմադրողականությունը, ստեղծում խոչընդոտներ ջրի և քամու ազդեցության դեմ: Հողատարումը կանխարգելող աշխատանքներում կարևոր են անտառաբարելավման և մարգագետնաբարելավման միջոցառումները:

Մ. հ. ունի մի քանի հազարամյակների պատմություն: Արհեստական ոռոգման համակարգեր են կառուցվել Միջագետքում, Եգիպտոսում, Հնդկաստանում, Չինաստանում, Հայաստանում, Անդրկասպյան երկրներում ևն, կատարվել են բարդ հիդրոտեխնիկական աշխատանքներ՝ հողերի ոռոգում, գետերի ափերի ամրացում, հակահեղեղային միջոցների, ջրամբարների, ջրամբարձ սարքավորումների կառուցում ևն: Հետագայում Մ. հ. աշխատանքները կատարելագործվել են և ընդգրկել ավելի ընդարձակ տարածություններ: XX դ. 50-ական թթ. աշխարհում ոռոգվել է 121 մլն *հա* հողատարածություն: Ռուսաստանում ճահճակալած հողերի չորացման աշխատանքներ (առանձին դեպքեր) կատարվել են դեռևս հնագույն ժամանակներից: XX դ. սկզբին Ռուսաստանում ոռոգվել էր 3,8 մլն *հա*, չորացվել 2,5 մլն *հա* հողատարածություն (1917-ին՝ համապատասխանաբար 4,1 և 3,2 մլն *հա*): 1977-ին ՍՍՀՄ-ում ոռոգվել է 16,0 մլն *հա*, կրացվել 50 մլն *հա* տարածություն և ջրարբիացվել 78 մլն *հա* արոտավայր: ՍՍՀՄ-ում բրնձի, բամբակի, բանջարեղենի 80%-ը, խաղողի վազի, շաքարի ճակնդեղի, պտղատու և կերային կուլտուրաների զգալի մասը մշակվում են բարելավված հողերում:

Հայաստանում Մ. հ. աշխատանքներ կատարվել են դեռևս մ. թ. ա. IX—VI դդ.: Ոռոգման հին կառույցների մնացորդներ կան Արագածոտնում, Գեղամա լեռների ցածրադիր մասերում և այլուր: Այդ ժամանակաշրջանում կառուցված ջրանցքների, ջրամբարների մի մասը գործում է մինչև այսօր (հին Սարդարապատի, Էջմիածնի, Դալմայի, Աշտարակի ևն): Ջրանցքներ կառուցվել են նաև վաղ միջնադարում և միջնադարում (Եղվարդի, Գողեվազի, Ակների ևն), Արևելյան Հայաստանը Ռուսաստանի հետ միավորելուց հետո՝ Արազդայանի և Շանգիրեյի:

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո կառուցվեցին նոր ջրանցքներ և ջրամբարներ: Մեծ նշանակություն ունեցավ արտեզյան ջրերի հայտնաբերումն ու օգտագործումը: 1979-ին ոռոգվել է մոտ 280 հզ. *հա* տարածություն, ջրարբիացվել 450 հզ. *հա* արոտավայր: Աշխատանքներ են կատարվում ճահճացած և գերխոնավացված հողերի բարելավման ուղղությամբ: Սկսած 1960-ական թթ. բարելավվում են Արարատյան հարթավայրի աղուտ-ալկալի հողերը (30 հզ. *հա*): 1977-ին բարելավվել և արտադրությանն է հանձնվել շուրջ 2,2 հզ. *հա* հողատարածություն: Մ. հ. համար օգտագործվում է ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության հողագիտության և ագրոքիմիայի ԳՀԻ-ի առաջարկած եղանակը, որի հիմքում ընկած է քիմ. արդյունաբերության թթու թափոնների՝ ծծմբական թթվի և երկաթի արջասպի օգտագործումը: Մեծ չափերի է հասել ստորերկրյա ջրերի մակարդակի իջեցման նպատակով կառուցված ցամաքուրդների ցանցը: 1978-ին այդ միջոցով բարելավվել է մոտ 64700 *հա* հողատարածություն:

ՀՍՍՀ-ում Մ. հ. գիտական հարցերով զբաղվում են հողագիտության և ագրոքիմիայի, երկրագործության, խաղողագործության, պտղաբուծության և գինեգործության, անասնաբուծության-անասնաբուժության, գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման և մեքենայացման, «Հայջրնախագիծ» ու «Հայպետհողշին» նախագծային ինստ-ները: *Հ. Պետրոսյան*

**ՄԵԼԻՏԵ Ա ՄԱՆԱԶԿԵՐՏՑԻ** (ծն. թ. անհտ.—456), Հայոց կաթողիկոս 452-ից: *Աղբիանոսյանների* տոհմից: Մասնակցել է Շահապիվանի 444-ի (որպես երեց) և Արտաշատի 449-ի (որպես եպիսկոպոս) ժողովներին: Վարել է չափավոր, հաճախ Գրիգոր Լուսավորչի տոհմի շառավիղներին հակընդդեմ քաղաքականություն:

**ՄԵԼԻՏԵՆԵ**, տես *Մալաթիա*:

**ՄԵԼԻՏՈՊՈԼ**, քաղաք, Ուկրաինական ՍՍՀ Զապորոժիեի մարզի Մելիտոպոլի շրջանի կենտրոնը: Ունի երկաթուղային կայարան: 163 հզ. բն. (1980): Տնտեսության առաջատար ճյուղը մեքենաշինությունն է: Կան սննդի և թեթև արդյունաբերության ձեռնարկություններ, մանկավարժական, գյուղատնտեսության մեխանիզացիայի ինստ-ներ, տեխնիկումներ, ուսումնարաններ, հայրենագիտական թանգարան: Քաղաք է 1841-ից:

**ՄԵԼԻՔ** Հակոբ (1817, Վան—մահ. թ. անհտ.), ռումինահայ հասարակական գործիչ, ճարտարապետ, Վալաքիայի 1848-ի հեղափոխության մասնակից: Մանուկ հասակում ծնողների հետ տեղափոխվել է Բուխարեստ: Ճարտ. բարձրագույն կրթությունը ստացել է Փարիզում: 1840-ական թթ. կեսին Մ. հրավիրվել է Բուխարեստ, 1847-ին նշանակվել Վալաքիայի ինժեներական բաժնի ճարտարապետ: Վալաքիայի 1848-ի հեղափոխության նախօրյակին ընտրվել է Բուխարեստում կազմակերպված դեմոկրատական ակումբի քարտուղար: Մ-ի տանը գումարվել են գաղտնի ժողովներ, կազմակերպվել զինված ջոկատներ: Հեղափոխության պարտությունից հետո հեռացել է Բուխարեստից: 1857-ին վերադարձել է, Վալաքիայի 21 ազգային գործիչների հետ ստորագրել (1858) «Հավատքի դավանանք» փաստաթուղթը, որը ժողովրդին կոչ էր անում միավորվել և ստեղծել միասնական Ռումինիա: 1860-ին ընտրվել է Վալաքիայի պառլամենտի անդամ: 1847-ին, ապա 1858-ից եղել է Բուխարեստի հայկ. համայնքի հոգաբարձության ղեկավարը:

Մ. նախագծել է Բուխարեստի Ազգային թատրոնի շենքը (չի կառուցվել), Հաղթական կամարը (1848), Կ. Պոլսում՝ Ճեզայիրլի ամիրայի ապարանքը (1850), Արճեշ գետի (Ռումինիա) կամուրջը (1857) ևն: Հրատարակել է «Արևելքը Արևմուտքի առջև» (ֆրանս., 1856) գիրքը, որը նվիրված է Թուրքիայի պատմությանը, այդ երկրի կյանքում հայերի ունեցած դերին և նրանց թշվառ վիճակին: Միաժամանակ, Մ. պատրանքներ է կապում Թուրքիայում կատարվող բարենորոգումների (թանզիմաթ) հետ:

Գրկ. Քոլանջյան Ս., Բուխարեստի հայոց անցյալն ու ներկան, «Էջմիածին», 1951, № 1—3: Սիրունի Հ. Ճ., Հայերը 1848-ին, «ԲՀՍ», 1968, № 3: *Ս. Քոլանջյան*

**ՄԵԼԻՔ** Ռուբեն (Մելիք-Մինասյանց Ռուբեն Լևոնի, ծն. 14.11.1921, Փարիզ), ֆրանսիական բանաստեղծ, ազգությամբ՝ հայ: Ֆրանսիայի կոմկուսի անդամ (1943): Սովորել է Սորբոնի համալսարանում (1939—1942): Ստեղծագործում է ֆրանսերեն: Գրական ասպարեզ է մտել «Աշխարհի ակորդներ» (1946) զրքով: Լավագույն գործերից են «Հորիզոն անցնողները» (1948, շարք, Ապոլիների մրցանակ), «Մեր երջանկության օպերան» (1950, պոեմ), «Քրիստոփոր Կոլումբոս»-ը (1952, պոեմ), «Լինչ»-ը (1954, պոեմ, բեմադրվել է 1961—1974-ին՝ «Սև տառապանք» վերնագրով), «Ապրելու ժամանակ»-ը (1957, շարք), «Միացյալ երգը» (հ. 1—2, 1960, 1967, հատընտիր, ֆրանս. ակադեմիայի Պիեռ դը Ռընսի մեծ մրցանակ), «Քարե հըսկողը» (1961, պոեմ, ֆրանս. ակադեմիայի ֆրանսերեն լեզվի մրցանակ), «Կամայական պոեմը» (1966, դասվել է տարվա լավագույն գործերի շարքը): 1976-ին հրատարակվել է Մ-ի «Մարմին, ինձնով կենդանի» (հայ. հրտ. 1978) գիրքը, որի համար նրան շնորհվել է ֆրանս. գրողների միության «Սոսիետե դե Ժան դը լետր» մրցանակը (1976): Մ-ի քնարերգությունը ինքնատիպ է. նա զույների մեջ տեսնում է հույզ, երաժշտական խազերի մեջ՝ ծիածանի երփներանգումներ, գծերի մեջ՝ իրերը, իրերի մեջ՝ շարժվող բնությունը և ապա այդ բոլորը կապում է իրար՝ մարդկային ապրումներն ու կյանքի երևույթները բացատրելու համար:

Մ. ապրում է Սովետական Հայաստանի վերելքով, նրա մշակույթի ու արվեստի հաջողություններով: Հայերին ու Հայաստանն է երգել «Հայկական լեգենդ» բանաստեղծությունում, «Հնչյակներ գիշերային երկրի» սոնետներում և այլ գործերում: Թարգմանել է հայ, մասնավորապես՝ սովետահայ բանաստեղծների գործեր, կազմել ու խմբագրել է «Հայ պոեզիայի անթոլոգիա V դարից մինչև մեր օրերը» (1973): 1968-ից բազմիցս եղել է Հայաստանում:

**ՄԵԼԻՔ** (Մելիքյան) Սոս Եփրեմի (ծն. 1914, Կիսլովոդսկ), հայ նկարիչ: 1922-ից ապրում է Նյու Յորքում: Սովորել է տեղի Ազգային ակադեմիայում: Ստեղծագործում է դիմանկարի բնագավառում: Աշխատանքներից են՝ Լ. Կոտովսկու, Ֆ. Շալյապինի, Չ. Հյուզի, Եփրեմ Մելիք-Ջաղեի, եղբոր՝ Ջավեն Մելիքի դիմանկարները: Մ. գծանկարի ճանաչված վարպետ է (նրան համեմատել են Հոլբայնի և Էնգրի հետ):

**ՄԵԼԻՔ** (արաբ. malik — տեր, տիրակալ, արքա), Առաջավոր Ասիայի երկրների մահմեդական տիրակալների անվանումը միջին դարերում: Հայաստանում տարածվել է ուշ միջնադարում: Իրանական տիրապետության ժամանակաշրջանում Մ. էին կոչվում բնիկ ազնվականության մնացորդներից բարձրացած և իրենց ենթակա տիրույթներում վարչական արտոնություն ունեցող մանր ֆեոդալները: XIV—XVIII դդ. Իրանում և Արևելյան Հայաստանում Մ. էին կոչվում նաև խոշոր ավանների և քաղաքային թաղամասերի ավագները, որոնք պատասխանատու էին պետ. հարկերի ու տուրքերի գանձման համար: Այդպիսի Մ-ներից էին Մելիք-Դավիթը և նրա օգնական Գյոզալ-բեկը (XVII դ. սկզբին)՝ Կոտայքում և Ամբերդում, Մելիք-Օվին և Մանվելը (XVII դ. 80-ական թթ.)՝ Ազուլիսում, Մկրտումը, Հակոբջանը և Մելիք-Աղամալյանները՝ Երևանում: Սյունիքում և Արցախում մելիքական իրավունքը, թեև հաստատվում էր շահական հրովարտակով, ուներ ժառանգական բնույթ: Մ. միանձնյա իշխանապետական իրավունքներ ուներ իր տիրույթում (մահալում), անձամբ լուծում էր հպատակների միջև ծագած վեճերը և կայացնում վճիռ: Մ-ները ունեին ամրոցներ, որոնք նրանց ինքնավարության ռազմ. հենակետերն էին: Տես նաև *Մելիքություն*:

Գրկ. Րաֆֆի, Խամսայի մելիքությունները, Երկ. ժող., հ. 10, Ե., 1964: Լեո, Երկ. ժող., հ. 3, գիրք 2, Ե., 1973: Պողոսյան Ֆ., Խամսայի մելիքների իրավունքների և պարտականությունների մասին, «ԲՀՍ», 1966, № 1: Մատենադարանի պարսկերեն վավերագրերը (կազմ. Փափազյան Հ. Դ.), պր. 1—2, Ե., 1956—59: *Հ. Փափազյան*

**ՄԵԼԻՔ Ս. ԴԱՎԻԹ-ԲԵԿ**, տես *Սարգիսյան* Սարգիս:

**ՄԵԼԻՔ-ԱԴԱՄՅԱՆ** Արտաշես Ալեքսանդրի [28.8.1885, գ. Շուլավեր (այժմ՝ Շահումյան, Վրաց. ՍՍՀ-ում)—10.3.1949, Երևան], հայ սովետական թերապևտ: Բժշկ. գիտ. դ-ր (1937), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1940): 1906-ին ավարտել է Թիֆլիսի գիմնազիան, ապա՝ Խարկովի համալսարանի բժշկ. ֆակուլտետը (1911) և աշխատել տեղի ֆակուլտետային թերապիայի, 1916—25-ին՝ հոսպիտալային թերապիայի կլինիկաներում, 1925-ից՝ Երևանի համալսարանի բժշկ. ֆակուլտետի ներքին հիվանդությունների ամբիոնի վարիչ: 1936—1937-ին եղել է Երևանի բժշկ. ինստ-ի դիրեկտորի տեղակալ, ապա՝ դիրեկտոր, 1938-ից՝ հանրապետական զինկոմիսարիատի ռազմաբժշկական հանձնաժողովի նախագահ: Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: Գիտական աշխատանքները հիմնականում վերաբերում են կլիմայաբուժության, խաղողաբուժության,



Ա. Ա. Մելիք-Ադամյան

սրտամկանի ինֆարկտի ախտորոշման, ռևմատիզմի և ներքին հիվանդությունների ուսումնասիրության հարցերին: Մ. եղել է հանրապետական բժշկ. ընկերության, առժողկոմատի բժշկ. գիտական խորհրդի, թերապևտների ընկերության և հանրապետական ռևմատիկ կոմիտեի նախագահ: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով: Մ-ի անունով են կոչվում Երևանի բժշկ. ինստ-ի հոսպիտալային թերապիայի կլինիկան և Երևանի փողոցներից մեկը:

*Վ. Մարտիրոսյան*

**ՄԵԼԻՔ-ԱԴԱՄԱԼՅԱՆ** Աբրահամ Սահակի (ծն. թ. անհտ.—1811), հասարակական գործիչ, Երևանի հայ ազգաբնակչության մելիք, Կոտայքի գավառում տիրել է մի քանի գյուղերի և մեծ համարում է ունեցել խանական արքունիքում: Մասնակցել է հայ ազատագրական շարժմանը: XVIII դ. 80-ական թթ. Արարատյան նահանգի հայերի անունից Ստեփան Դավթյանի միջնորդով դիմել է ռուս. կառավարությանը՝ օգնություն հայցելով պարսկ. լծից ազատագրվելու գործում: 1804-ի Երևանյան առաջին արշավանքի ժամանակ Պ. Դ. Ցիցիանովի և վիրահայերի առաջնորդ Հովհաննես Գեղարդակրի հորդորանքով իրեն ենթակա բնակչության հետ գաղթել է ռուս. սահմանները՝ Փամբակ: Ռուս. կառավարությունը նրան շնորհել է ազնվականի կոչում:

*Վ. Դիլոյան*

**ՄԵԼԻՔ-ԱԴԱՄԱԼՅԱՆ** Աղամալ Սիմոնի (1830, Երևան—1906, Ալեքսանդրապոլ, այժմ՝ Լենինական), հայ թառահար (նվագել է նաև քամանչա և դափ): Մերձավորարևելյան, մասնավորապես իրանական երաժշտության քաջագիտակ, իր մրցակիցներին միշտ գերազանցել է մուղամների և դաստգյահների իմացությամբ ու դրանց բարդ բովանդակությունը հաղորդելու ունակությամբ: Որպես ժամանակի վիրտուոզ թառահար արժանացել է Իրանի շահի պարգևին՝ պալատական հավաքածուից նվիրված թառի: Կոմպոզիտոր Ն. *Տիգրանյանը* Մ-Ա-ի կատարումից գրառել և դաշնամուռային մշակումով հրատարակել է Բայաթի-Քուրդ, Բայաթի-Շիրազ, Հեյդարի, Շահնազ, Ջաոգյահ, Նովրուզ Արաբի, Նավա, Սեգյահ, Շյուշթար են մուղամներ ու դաստգյահներ, որոնք Արևելքի ժողովրդա-պրոֆեսիոնալ երաժշտության տվյալ ժանրի առաջին նոտագրումներից են:

*Մ. Տեր-յան*

**ՄԵԼԻՔ-ԱԴԱՄԱԼՅԱՆ** Սահակ Աբրահամի (ծն. թ. անհտ.—1834, Երևան), հասարակական գործիչ: Ա. Ս. *Մելիք-Ադամալյանի* որդին: 1804-ին հոր և բազմաթիվ հայ գերդաստանների հետ գաղթել է Փամբակ, սակայն հետագայում վերադարձել է Երևան և ստանձնել մելիքի պաշտոնը: Երևանի վերջին սարդար Հյուսեին-Ղուլի խանի մերձավոր պաշտոնյաներից էր և խանության հայկ. հետևազորի հրամանատարը: 1826—28-ի ռուս-պարսկական պատերազմի ժամանակ մեծ ծառայություններ է մատուցել ռուս. զորքին: Հայկ. մարզի ստեղծումից հետո Մ-Ա., որպես հայ բնակչության ներկայացուցիչ, անդամակցում էր մարզային վարչությանը:

**ՄԵԼԻՔ-ԱԴԱՄԱԼՅԱՆՆԵՐ**, մելիքական տոհմ Հայաստանում: Տոհմի ներկայացուցիչները կառավարել են Երևանի խանության հայ ազգաբնակչությանը XVIIդ. 2-րդ կեսից, Երևանի սարդարի ընդհանուր իշխանության ներքո: Մ-Ա. զըլխավորում էին տեղական հայկ. հետևակ զորքը: Տոհմի նշանավոր դեմքերից էին Մելիք Աբրահամը (տես *Մելիք-Ադամալյան* Աբրահամ) և նրա որդի Մելիք Սահակը (տես *Մելիք-Ադամալյան* Սահակ), որոնք ունեցել են ընդգծված ռուս. կողմնորոշում: Թիֆլիսյան իրավունքով Մ-Ա-ին էին պատկանում Կըրխբուլաղի մահալի մի շարք գյուղեր (Էլար, Զագ, Աղվերան են): Երևանի խանությունը Ռուսաստանին միանալուց հետո Մ-Ա. զրկվեցին մելիքական իշխանությունից:

*Վ. Դիլոյան*

**ՄԵԼԻՔ-ԱԴԱՄԻՐՅԱՆ** Հմայակ Ռուստամի [17(29).10.1887, գ. Նորաշենիկ, Ղափանի շրջան], հայ սովետական քիմիկոս: Ինժեներ-տեխնոլոգ, տեխ. գիտ. թեկնածու (1954): Ավարտել է Գրենոբլի համալսարանը (1913): Մասնակցել է Երևանի ձեթ-օճառ գործարանի (1924—1926-ին), Կիրովականի քիմ. կոմբինատի (տեխ. դիրեկտոր, 1928—34-ին) և Երևանի սինթետիկ կաուչուկի գործարանի (տեխ. դիրեկտոր, 1934-ից) կառուցմանը: 1935—37-ին եղել է ՀՍՍՀ Պետպլանի նախագահի տեղակալ: 1946-ից աշխատել է Կիրովականի քիմ. կոմբինատում, 1957-ից՝ Երևանի լենինամետալուրգիական ԳՀԻ-ում: Զբաղվել է բազալտների թրծման և ձուլման ուսումնասիրությամբ:

*Երկ.* Рождение завода, Е., 1978.

**ՄԵԼԻՔԱՆ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Քղիի գավառում: 1909-ին ուներ 200 (40 ընտանիք) հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին, Կամախի կիրճում: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՄԵԼԻՔ-ԱՎԱԳՅԱՆ** Գրիգոր Գևորգի (ծն. 21.6.1920, Թիֆլիս), հայ սովետական կինոռեժիսոր և կինոդրամատուրգ: ՀՍՍՀ ժող. արտիստ (1974): 1951-ին ավարտել է Մոսկվայի համամիութենական կինոինստիտուտը, աշխատել Կիևի կինոստուդիայում, 1952-ին տեղափոխվել «Հայֆիլմ»: Ստեղծել է «Սևանի ջրերը» (1952, Լ. Վաղարշյանի հետ), «Ցոթ երգ Հայաստանի մասին» (1967), «Մի՛ դողանջիր, զանգ, մի՛ դողանջիր» (1963) և այլ վավերագրական ֆիլմեր: Մ-Ա-ի գեղարվեստական կինոնկարներից են՝ «Սիրտն է երգում» (1956, Յու. Երզնկյանի հետ), «Մոր սիրտը» (1958), «Ինչո՞ւ է աղմկում գետը» (1959), «Երգում է Գոհար Գասպարյանը» (1963), «Անցյալի արձագանքը» (1970), «Կամոյի վերջին սխրանքը» (1973, Ս. Կևորկովի հետ), «Պաղտասարը բաժանվում է կնոջից» (1975), «Մեռիր թամբի վրա» («Գայ», 1979): Պարգևատրվել է Կարմիր աստղի շքանշանով:



Կադր «Արևածագից առաջ» (1960) կինոնկարից, ռեժ. Գ. Մ ե լ ի ք - Ա վ ա գ յ ա ն

*Է. Մանուկյան*

**ՄԵԼԻՔ-ԲԱԽՇՅԱՆ** Ստեփան Տիգրանի (ծն. 15.4.1924, Նախիջևան), հայ սովետական պատմաբան: Պատմ. գիտ. դ-ր (1965), պրոֆեսոր (1969): ՍՄԿԿ անդամ 1947-ից: Ավարտել է Երևանի համալսարանի պատմության ֆակուլտետը (1945): 1949-ից նույն ֆակուլտետում դասավանդում է Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի պատմություն և հայոց պատմության աղբյուրագիտություն: Զբաղվում է Հայաստանի միջին դարերի պատմության հարցերով: Գրել է «Պավլիկյան շարժումը Հայաստանում» (1953), «Հայաստանը VII—IX դարերում» (1968) աշխատությունները, կազմել «Հայոց պատմության աղբյուրագիտություն» (1979) բուհական ձեռնարկը, մասնակցել «Հայ ժողովրդի պատմություն» բուհական դասագրքերի (1963, 1975) ստեղծմանը:

**ՄԵԼԻՔ-ԲԵԳԼԱՐՅԱՆՆԵՐ**, մելիքական տուն Արցախի Խաչեն գավառում: Տոհմի իշխանությունն առաջացել է XVII դ. սկզբին, Ներքին Խաչենի իշխանության ճյուղավորումից: Իշխանանիստը Գյուլիստան ամրոցն էր, նաև Թալիշ գյուղը (այժմյան Լեռնային Ղարաբաղի ԻՄ Մարտակերտի շրջանում): Մ-Բ. ունեցել են ռուս. կողմնորոշում, գործուն մասնակցություն ցուցաբերել XVIII դ. 1-ին քառորդին Արցախում ծավալված ազատագրական կռիվներին: Արցախը Ռուսաստանին միացվելուց (1813) հետո Մ-Բ-ի ժառանգները մտել են ռուս. ծառայության մեջ, իբրև տոհմիկ ազնվականներ:

*Գրկ.* Բ ա ր խ ո ւ դ ա ր յ ա ն ց Մ., Արցախ, Բաքու, 1895:

**ՄԵԼԻՔԳՅՈՒՂ**, գյուղ Հայկական ՍՍՀ Արագածի շրջանում, շրջկենտրոնից 12 *կմ* հյուսիս-արևելք: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև հացահատիկի և կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կապի բաժանմունք, կինո, մանկապարտեզ, բուժկայան: Գյուղում պահպանվել


Մելիքգյուղ

են եկեղեցի (XIX դ., հին եկեղեցու տեղում), գերեզմանոց (XVII—XVIII դդ.):

**ՄԵԼԻՔ-ԳՐԻԳՈՐՅԱՆ** Գերասիմ Առաքելի [29.1(11.2).1883, Վերին Ագուլիս—1974, Երևան], Անդրկովկասում սովետական կարգերի համար մղված պայքարի մասնակից: ՀՍՍՀ վաստ. բժիշկ: Կոմունիստական կուսակցության անդամ 1902-ից: Ավարտել է Խարկովի համալսարանի բժշկ. ֆակուլտետը: Ընդհատակյա հեղափոխական աշխատանք է տարել Բաքվում, Թիֆլիսում, Խարկովում և Լոռու «Չեզոք գոտում»: Բազմիցս կատարել է Ս. Շահումյանի, Բ. Կնունյանցի, Ս. Սպանդարյանի


Գ. Ա. Մելիք-Գրիգորյան

և Կամոյի կուսակցական հանձնարարությունները: Որպես պրոպագանդիստ-ագիտատոր բանվորական խմբակներում կազմակերպել է հեղափոխական թռուցիկներ տպագրելու և տարածելու գործը: Նրա բնակարանը եղել է ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեի ընդհատակյա աշխատանքների կազմակերպման, կուսակցական գործիչների հանդիպման վայր: Հեղափոխական գործունեության համար արգելափակվել է Թիֆլիսի (1904), Խարկովի (1913) և Լոռու «Չեզոք գոտու» (1920) բանտերում: 1921—48-ին Ալավերդում, Կիրովականում և Լենինականում եղել է հիվանդանոցի գլխավոր բժիշկ, իսկ 1948—59-ին՝ Երևանում սանիտարա-էպիդեմիոլոգիական կայանի պետ: ՀՍՍՀ IV—VI գումարումների Գերագույն սովետի դեպուտատ, ՍՄԿԿ XXII համագումարի պատգամավոր: 1959-ից՝ միութենական կարգի կենսաթոշակառու: Պարգևատրվել է Լենինի (2), Հոկտեմբերյան հեղափոխության, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով:
*Լ. Առաքելյան*

**ՄԵԼԻՔ-ԵԳԱՆՅԱՆՆԵՐ**, Մելիք-Ավանյաններ, մելիքական տուն Արցախի Դիզակ գավառում: Ենթադրվում է, որ սերում էին IX դ. Արցախի իշխան Եսայի Ապումուսեի տոհմից: XVI դ. 1-ին քառորդում Դիզակի ֆեոդալական իշխանության (տես *Դիզակի մելիքություն*) տեր Եգանը կարևոր դեր է կատարել Արցախում մղված ազատագրական կռիվներում: Դիզակի տերերը Մ-Ե. են կոչվել նրա անունով: Մ-Ե-ի աթոռանիստն էր Տող (Դող) ավանը: Արցախը Ռուսաստանին միացվելուց (1813) հետո Մ-Ե. զրկվել են մելիքական իրավունքներից և ռուս. կալվածատիրությունից ստացել տոհմիկ ազնվականների իրավունքներ:

**ՄԵԼԻՔ-ԹԱՆԳԻԵՎ** Ջավեն Իվանի (20.8.1905, Շուշի—14.7.1966, Բաքու), հայ սովետական ինժեներ-տեխնոլոգ: ՍՄԿԿ անդամ 1944-ից: Ավարտել է Ադրբեջանի պոլիտեխնիկական ինստ-ը (1930): 1938-ից եղել է «Ազնեֆթեպրոյեկտ» ինստ-ի գլխավոր ինժեները: Մասնակցել է համաշխարհային պրակտիկայում առաջին անգամ բաց ծովում ստեղծված «Նավթային քարեր» քաղաքատիպ ավանի նախագծմանը և կառուցմանը: Լենինյան մրցանակի դափնեկիր (1961): Պարգևատրվել է Լենինի և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով: Կասպից ծովի նավթարդյունահանման նավատորմի նավերից մեկը կրում է Մ-Թ-ի անունը:
*Հ. Առուց*

**ՄԵԼԻՔ-ԹԱՆԳՅԱՆ** Ներսես (Նիկողայոս) [16(28).3.1866, գ. Բռնակոթ (այժմ՝ ՀՍՍՀ Սիսիանի շրջանում)—26.9.1948, Թավրիզ], հոգևորական գործիչ, բանասեր: 1886-ին ավարտել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանը, 1900-ին՝ Պետերբուրգի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը: 1907-ին հակացարական գործունեության համար աքսորվել է Ղրիմ: 1909-ից հոգևորական պաշտոններ է վարել Էջմիածնում: 1912—48-ին եղել է Ատրպատականի հայոց թեմի առաջնորդը: Հրատարակվել են նրա «Աշխարհաբարի քերականությունը» (1893), «Մշակ» և «Նոր դար» կուսակցություններ և մի քանի խնդիրներ» (1894), «Հայոց եկեղեցական իրավունքը» (գիրք 1—2, 1903—05) գրքերը:
*Ա. Տեր-Ստեփանյան*

**ՄԵԼԻՔ-ԹԵՓԵ**, գյուղ Տրապիզոնի վիլայեթում, Սամսոն գավառի Ունիե գավառակում: 1915-ին ուներ 25 տուն հայ բնակիչ: Զբաղվում էին կարտոֆիլի և եգիպտացորենի մշակությամբ, անասնաբուծությամբ, թռչնաբուծությամբ և մեղվաբուծությամբ: Դպրոցահասակ երեխաները հաճախում էին հարևան Փելիթ-Ցաթաղ գյուղի քառամյա վարժարանը: Բնակիչները բնաջնջվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ:
*Բ. Թոռլաքյան*

**ՄԵԼԻՔԻՇՎԻԼԻ** Գեորգի Ալեքսանդրի (ծն. 30.12.1918, Թիֆլիս), վրաց սովետական արևելագետ, կովկասագետ: Պատմ. գիտ. դ-ր (1954), պրոֆեսոր (1956), Վրաց. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1960), գիտ. վաստ. գործիչ (1968): ՍՄԿԿ անդամ 1946-ից: Ավարտել է Թբիլիսիի պետ. համալսարանը (1939): 1965-ից Վրաց. ՍՍՀ ԳԱ Ի. Ա. Ջավախիշվիլու անվ. պատմության, հնագիտության և ազգագրության ինստ-ի դիրեկտորն է: 1967—71-ին միաժամանակ եղել է Վրաց. ՍՍՀ ԳԱ հասարակական գիտությունների բաժանմունքի ակադեմիկոս քարտուղար: Վրաց. ՍՍՀ ԳԱ «Լրաբեր» մատենաշարի գլխավոր խմբագիրն է: Հեղինակ է շուրջ 100 գիտական աշխատությունների: Զբաղվում է Հին Արևելքի (գլխավորապես Ուրարտուի) և Հին Անդրկովկասի (գլխավորապես Հին Վրաստանի) պատմությամբ: Առանձնապես աչքի են ընկնում ուրարտ. սեպագիր արձանագրությունների լիակատար ժողովածուն՝ տեքստերի գիտական տառադարձումներով, թարգմանություններով, քերականությամբ, բառարանով են, ինչպես նաև Ուրարտուի ժամանակագրության, քաղ. ու սոցիալ-տնտեսական պատմության, տեղագրության, բնակչության էթնիկական կազմի մեկնաբանության, խուռի-ուրարտացիների և Անդրկովկասի հնագույն ժողովուրդների՝ հայերի ու վրացիների մշակույթների պատմական աղերսների բացահայտման վերաբերյալ աշխատությունները: Այդ բնագավառում գիտական ներդրումների համար 1957-ին Մ. արժանացել է լենինյան մրցանակի: Վերջին շրջանում Մ. իր հետազոտություններում զգալի տեղ է հատկացնում Հին Վրաստանի պատմության, վրաց ժողովրդի էթնոգենեզի ուսումնասիրությանը: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի և «Պատվո նշան» շքանշաններով:

*Երկ.* Наири—Урарту, Тб., 1954; К истории древней Грузии, Тб., 1960; Урартские клинообразные надписи, М., 1960.
*Ն. Հարությունյան*

**ՄԵԼԻՔԻՇՎԻԼԻ**, Մելիքով, Պյոտր Գրիգորի [29.6(11.7).1850, Թիֆլիս—23.3.1927, Թիֆլիս], սովետական քիմիկոս: ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ (1927): 1872-ին ավարտել է Օդեսայի Նովոռոսիյսկյան համալսարանը (1895—1917-ին՝ նույն համալսարանի պրոֆեսոր): 1918-ին հիմնադրված Թիֆլիսի համալսարանի առաջին ռեկտորը: 1873—91-ին հայտնագործել և ուսումնասիրել է օրգ. միացությունների նոր դաս՝ գլիցիդային թթուներ: 1897—1913-ին Լ. Պիսարժևսկու հետ սինթեզել է U, Nb, Ta, W, B, Mo, Ti, V-ի գերթթուները: Առաջինն է ստացել ամոնիումի գերօքսիդ և նատրիումի գերբորատ: Առաջարկել է վերլուծական նոր մեթոդներ:

**ՄԵԼԻՔ-ԻՍՐԱՅԵԼՅԱՆ** Սուրեն Սամսոնի [29.9.1908, գ. Վերին Արտաշատ (այժմ՝ ՀՍՍՀ Արտաշատի շրջանում)—12.3.1975, Երևան], հայ սովետական բժիշկ, վիրաբույժ: Բժշկ. գիտ. դ-ր (1967), պրոֆեսոր (1970): Ավարտել է Երևանի բժշկ. ինստ-ի բուժական ֆակուլտետը (1933), աշխատել Վեդիի և Եղեգնաձորի շրջանային հիվանդանոցներում՝ որպես վիրաբույժ և գլխավոր բժիշկ: Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: 1944—45-ին գործուղվել է Իրան, եղել սովետական հիվանդանոցի դիրեկտոր և գլխավոր վիրաբույժ: 1945-ից Մ-Ի. աշխատել է Երևանի բժշկ. ինստ-ի ընդհանուր վիրաբուժության ամբիոնում: Գիտական աշխատանքները հիմնականում վերաբերում են վի-

րաքուժականախտաբանության կարևորագույն պրոբլեմների, ջերմային այրվածքների ախտածնության ու բուժման հարցերի ուսումնասիրությանը: Մ-Ի. առաջարկել է նշված այրվածքների բուժման մեթոդ, որի շնորհիվ զգալիորեն նվազում է մահացությունը:

**ՄԵԼԻՔ-ՀԱՅԿԱԶՅԱՆ** Հովսեփ Իսահակի (10.7.1888, Աբասթուման — 18.7.1938), հայ սովետական ինժեներ: Ավարտել է Լիեժի (Բելգիա) համալսարանի լեռնային բաժինը (1913), միաժամանակ ուսումնասիրել է էլեկտրատեխնիկա: Աշխատել է Բաքվում: 1915-ին եկել է Հայաստան: 1915—28-ին եղել է Ալավերդու պղնձաձուլական գործարանի պղնձահանքի, հանքավայրի և էլեկտրոլիզի բաժնի վարիչ: 1925—29-ը՝ կարգադրիչ դիրեկտոր: 1930—1933-ին աշխատել է Երևանի քաղշին տրեստում, 1933-ից՝ Կիրովի անվ. սինթետիկ կաուչուկի գործարանի մոնտաժի և շահագործման գլխավոր ինժեներ:

**ՄԵԼԻՔ-ՄՈՒՍՅԱՆ** Բաբկեն Մկրտչի (19.2. 1893, Վերին Ագուլիս —26.2.1960, Երևան), հայ սովետական ակնաբույժ: Բժշկ. գիտ. դ-ր (1948), պրոֆեսոր (1949): 1913-ին


Բ. Մ. Մելիք-Մուսյան

ավարտել է Թիֆլիսի Ներսիսյան դպրոցը, 1920-ին՝ Տոմսկի համալսարանի բժշկ. ֆակուլտետը, աշխատել տեղի աչքի հիվանդությունների կլինիկայում և միաժամանակ ղեկավարել քաղաքային մանկական տրախոմային հիվանդանոցը: 1923—1926-ին աշխատել է Բենդերում, 1926—1933-ին՝ Կիրովականում, 1933-ից՝ Երևանում, 1935-ից՝ Երևանի բժշկ. ինստ-ի աչքի հիվանդությունների ամբիոնի և կլինիկայի վարիչ: Եղել է ակնաբույժների համամիութենական ընկերության անդամ, ՀՍՍՀ ակնաբույժների ընկերության նախագահ:

**ՄԵԼԻՔՅԱՆ** Ալեքսանդր Նիկոլայի (5.2. 1877, Հադրութ —16.3.1969, Երևան), հայ սովետական ինժեներ-տեխնոլոգ, մաթեմատիկոս, մանկավարժ: ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1946): Ավարտել է Պետերբուրգի տեխնոլոգիական ինստ-ը (1908): 1908—1922-ին մաթեմատիկա է դասավանդել Երևանի և Թիֆլիսի դպրոցներում ու գիմնազիաներում: Մ. նախագծել և կառուցել է Երևանի ջրմուղը (1908—15): Հայաստանում առաջին տեխ. դպրոցների՝ տեխնիկումների կազմակերպիչներից է. 1922—1931-ին եղել է Երևանի ինդուստրիալ տեխնիկումի դիրեկտորը: Դասավանդել է գյուղատնտ. ինստ-ում (1931—33), Երևանի համալսարանում (1933—61): 1941—61-ին եղել է համալսարանի ուս. աշխատանքների գծով պրոռեկտոր: Հայկ. ՍՍՀ IV գումարման Գերագույն սովետի դեպուտատ: Պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով:

**ՄԵԼԻՔՅԱՆ** Արշավիր Միքայելի [28.1(9.2). 1879, գ. Փաշալու (այժմ՝ գ. Ջառիթափ, ՀՍՍՀ Ազիզբեկովի շրջանում)—1937, Թբիլիսի],պրոֆեսիոնալ հեղափոխական, հրապարակախոս: Կոմունիստական կուսակցության անդամ 1906-ից: Սովորել է Խարկովի համալսարանում (1899—1901),


Ա. Մ. Մելիքյան

ավարտել՝ Ցյուրիխի համալսարանի փիլ-յան և Նյուշատելի (Շվեյցարիա) ակադեմիայի գրականության ֆակուլտետները: Խարկովում գործուն մասնակցություն է ունեցել ուսանողների հեղափոխական ելույթներին, կապվել ս-դ. կազմակերպությունների հետ: 1901-ին, իբրև «անբարեհույս ուսանող», հեռացվել է Խարկովի համալսարանից և արտաքսվել Կովկաս: 1902-ին Պետերբուրգում մասնակցել է ուսանողական համառուսաստանյան համագումարին: 1903-ին մեկնել է Շվեյցարիա: Տարագրության մեջ սերտ կապեր է հաստատել Վ. Ի. Լենինի, Գ. Վ. Պլեխանովի, Ա. Վ. Լունաչարսկու, Ռ. Լյուքսեմբուրգի, Կ. Լիբկնեխտի, Ա. Բեբելի և ուրիշների հետ: 1911-ին վերադարձել է Երևան, աշխատանքի անցել Գայանյան դպրոցում, ծավալել հրապարակախոսական լայն գործունեություն, հանդես եկել դասախոսություններով ու հոդվածներով՝ նվիրված մարքսիստական փիլ-յան, սոցիոլոգիայի, գրականության և արվեստի հարցերին: 1913-ին նրա ջանքերով Երևանում լույս է տեսել «*Խոսք*» թերթը, որի 17-րդ համարից հետո Մ. բանտարկվել է՝ մեղադրվելով թերթին հակակառավարական ուղղություն տալու մեջ: 1918—19-ին Մ-ին հաջողվել է վերստին հրատարակել թերթը՝ այս անգամ որպես ՌՍԴԲԿ Երևանի կազմակերպության օրգան: 1919-ին ընտրվել է Հայաստանի բուրժ. հանրապետության պառլամենտի անդամ և խստորեն մերկացրել դաշնակների հակաժողովրդական քաղաքականությունը: Մ. Հայաստանում «Սպարտակ» երիտասարդական կազմակերպության հիմնադիրներից է: Մասնակցել է Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների 1919-ի սեպտեմբերի և 1920-ի հունվարի անլեգալ խորհրդակցություններին, ընտրվել Արմենկոմի առաջին կազմում: 1920-ին մեկնել է Մոսկվա, հանդիպել Վ. Ի. Լենինի հետ և նշանակվել Ժողկոմխորհի արտասահմանյան մամուլի ռեֆերենտ: 1921-ին մի շարք կուսակցական աշխատողների հետ ուղարկվել է Թիֆլիս, որտեղ լայն աշխատանք է ծավալել, գրել բազմաթիվ հոդվածներ հայ հասարակական մտքի զարգացման և անցյալի ժառանգության մարքսիստական վերագնահատման վերաբերյալ: 1924—32-ին դասախոսել է Թիֆլիսի 26 կոմիսարների անվ. կոմունիստական համալսարանում (1932-ից՝ պրոֆեսոր): Զբաղվել է հայ ժողովրդի դասակարգային պայքարի, մամուլի պատմության հարցերով: Մ. լուրջ վաստակ ունի մարքսիզմի դասականների երկերը հայերեն թարգմանելու և հրատարակելու գործում: Մ-ի ծննդավայրում կանգնեցված է նրա հուշարձանը:

*Երկ.* Աղայան Ծ., Արշավիր Մելիքյան, Ե., 1969: *Ծ. Աղայան*

**ՄԵԼԻՔՅԱՆ** (Մ ե լ ի ք ո վ) Բալա Գրիգորի (1888, Շուշի —1935), հայ թառահար: Հատուկ երաժշտական կրթություն չի ստացել. նրա երաժշտական ճաշակն ու ունակությունները ձևավորվել և զարգացել են Շուշվա ժողովրդա-երաժշտական միջավայրում, հոր՝ այդ ժամանակ արդեն նշանավոր թառահար Գրիգոր Մելիքովի (1859—1929) ազդեցությամբ: Տասնինը տարեկան հասակում Մ. արդեն ճանաչված թառահար էր և իր գործունեությամբ կապված էր նաև Բաքվի, Թիֆլիսի ու Երևանի երաժշտական կենտրոններին: Վիրտուոզ թառահար, մուղամների անզուգական կատարող Մ. իր կազմակերպած գործիքային անսամբլներով համերգներով հանդես է եկել (որպես մենակատար և նվագակցող) նաև Մոսկվայում ու Լենինգրադում: *Ա. Փահլևանյան*

**ՄԵԼԻՔՅԱՆ** Խաչատուր Բեգլարի [1911, գ. Զագլիկ (այժմ՝ Ադրբ. ՍՍՀ Դաշքեսանի շրջանում)—1942, Օրյոլ (Կուրսկի մարզ)], Սովետական Միության հերոս (ետմահու, 6.11.1942), ավագ լեյտենանտ: ՍՄԿԿ անդամ 1940-ից: Հայրենական մեծ պատերազմին մասնակցել է 1941-ի հունիսից, նախ որպես հրաձգային վաշտի, ապա գումարտակի հրամանատար: 1942-ի հունվարին իր գումարտակով ազատագրել է Կուրսկի մարզի Վեյսոլի, Պերեսիպ, Օրլովկա, Զորինսկիե Դվորի բնակավայրերը: Հերոսի կոչմանը արժանացել է 1942-ի հունվարին Օրյոլ քաղաքի ազատագրման մարտերում ցուցաբերած խիզախության համար: Պարգևատրվել է Լենինի, Կարմիր դրոշի շքանշաններով:

**ՄԵԼԻՔՅԱՆ** Հենրիկ Սասունիկի [ծն. 5.1. 1926, գ. Մարալիկ (ՀՍՍՀ Անիի շրջանում)], հայ սովետական պատմաբան: Պատմական գիտ. դ-ր (1972), պրոֆեսոր (1973): ՍՄԿԿ անդամ 1946-ից: Ավարտել է Երևանի համալսարանի պատմության ֆակուլտետը (1948): 1948—49-ին աշխատել է ՀԼԿԵՄ Կենտկոմի ապարատում: 1949—1971-ին դասախոսել է Երևանի համալսարանում և Կոմիտասի անվ. կոնսերվատորիայում, 1969—71-ին եղել է ՀԿԿ Երևանի քաղկոմի գիտության և ուս. հաստատությունների բաժնի վարիչ, 1971—80-ին՝ Խ. Աբովյանի անվ. հայկ. մանկավարժական ինստ-ի գիտ. աշխատանքների գծով պրոռեկտորը: 1980-ից ՄԼԻ-ում ավագ գիտաշխատող է: Զբաղվում է Հայաստանի և Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների ու հեղափոխական շարժումների պատմության հարցերով: Պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով:

*Երկ.* Մարքսիստական կազմակերպությունները և ռնոլյուցիոն շարժումները Լո-

ռում (1899—1908), Ե., 1957: Հոկտեմբերյան հեղափոխությունը և Կովկասյան բանակը, Ե., 1970: Հեղափոխական շարժումները կովկասյան բանակում. 1914—1917, Ե., 1975: Источниковедение и историография революционного движения в Кавказской армии в 1914—1918 гг., Е., 1972.

**ՄԵԼԻՔՅԱՆ** Հովիկ Մամիկոնի [30.6.1902, Խաչակապ (այժմ՝ Ադրբ. ՍՍՀ Խանլարի շրջանի Ղուշչի գ.) — 8.2.1953, Երևան], հայ սովետական գրող, գրականագետ: Պրոֆեսոր (1937): ՍՄԿԿ անդամ 1924-ից: 1934—36-ին աշխատել է ՀԿԿ Կենտկոմում և Երևանի քաղկոմում: 1937-ին եղել է ՀՍՍՀ լուսժողկոմ, 1937—39-ին՝ «Գրական թերթ»-ի խմբագիր, 1938—41-ին՝ ԳԱ գրականության և լեզվի ինստ-ի դիրեկտոր, 1941—44-ին ծառայել է սովետական բանակում: 1944—46-ին «Սովետական գրականություն և արվեստ» ամսագրի խմբագիրն էր: 1936—41-ին և 1945—53-ին ռուս գրականություն է դասավանդել Երևանի համալսարանում: Առաջին գիրքը՝ «Զըղջում» խորագրով, լույս է տեսել 1928-ին: Այնուհետև հրատարակվել են նրա «Պատմվածքներ» (1930), «Ճակատում» (1931), «Աղջիկը մորու փունջը ձեռքին» (1936) պատմվածքների ժողովածուները:

**ՄԵԼԻՔՅԱՆ** Հրաչյա Սպիրիդոնի (1913—1942), հայ կոմպոզիտոր: Ս. *Մելիքյանի* որդին: Միջնակարգ մասնագիտական կրթությունն ստացել է Երևանում: 1941-ին ավարտել է Մոսկվայի կոնսերվատորիան: Մ. սերտորեն կապված էր ժող. երաժշտության հետ: Նրա աչքի ընկնող ստեղծագործություններից են «Սասունցի Դավիթ» սիմֆոնիկ պոեմը, լարային կվարտետը, դաշնամուրային պրելյուդները, երգերը: Զոհվել է Հայրենական մեծ պատերազմում:

*Ա. Փահլևանյան*

**ՄԵԼԻՔՅԱՆ** Մելիք Գալուստի («Դեդուշկա») [10(22).10.1868, գ. Բանանց (այժմ՝ Ադրբ. ՍՍՀ Դաշքեսանի շրջանում) —18.9. 1918, Բաքու], պրոֆեսիոնալ հեղափոխական, Անդրկովկասի հեղափոխական ու սոցիալ-դեմոկրատական գործիչ, հրապարակախոս: Կոմունիստական կուսակցության անդամ 1898-ից:

1886-ից որպես բանվոր աշխատել է նախ Բաքվում, ապա Թիֆլիսում և վաղ հասակից ներգրավվել հեղափոխական շարժման մեջ: 1898-ին Մ., մի քանի հեղափոխականների հետ, Թիֆլիսում ստեղծել է հայ բանվորների առաջին մարքսիստական խումբը: Եղել է ՌՍԴԲԿ Թիֆլիսի կազմակերպության ղեկավար աշխատողներից, ակտիվ մասնակցություն է ունեցել տեղի բանվորական գործադուլներին, 1901-ի մայիսմեկյան ցույցին. հանդես է եկել որպես լենինյան «Իսկրա»-ի գործակալ: 1901-ին Լ. Կրասինի, Բ. Կնունյանցի, Լ. Կեցխովելու հետ միասին եղել է ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի հիմնադիր անդամներից, իսկ 1902-ին՝ Ստ. Շահումյանի, Բ. Կնունյանցի, Ա. Զուրաբյանի և ուրիշների հետ Թիֆլիսում *«Հայ սոցիալ-դեմոկրատների միության»* կազմակերպիչներից: Ակտիվ մասնակցություն է ունեցել Բաքվի անլեգալ *«Նինա»* տպարանի ստեղծմանն ու 1903-ի համընդհանուր գործադուլի կազմակերպմանը: ՌՍԴԲԿ II համագումարից հետո, անվերապահորեն կանգնելով բոլշևիզմի դիրքերի վրա, Մ.



Մ. Գ. Մելիքյան

ծավալել է հեղափոխական լայն գործունեություն: ՌՍԴԲԿ Կովկասյան միութենական կոմիտեի հանձնարարությամբ ղեկավար մասնակցություն է ունեցել բոլշևիկյան խմբերի ու բջիջների ստեղծմանը Գանձակում (այժմ՝ Կիրովաբադ), Հաղպատում, Ալավերդում և այլուր: Մ. եռանդուն գործունեություն է ծավալել ռուս. առաջին հեղափոխության տարիներին, եղել Ալավերդու բանվորների 1905-ի նոյեմբերյան և 1906-ի օգոստոսյան գործադուլների կազմակերպիչներից: Ակտիվորեն մասնակցել է բոլշևիկյան հայ մամուլի ստեղծմանը, թղթակցել «Կայծ», «Նոր խոսք», «Օրեր» և այլ թերթերի: Հեղափոխության նոր վերելքի տարիներին Մ. կազմակերպական ու պրոպագանդիստական գործունեություն է ծավալել Բաքվում, Թիֆլիսում, Ղափանում և Լոռիում, իսկ առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ՝ լենինյան դիրքերից լայն աշխատանք էր տանում ժող. մասսաների մեջ: Հեղափոխական գործունեության համար բազմիցս հետապնդվել ու բանտարկվել է ցարական իշխանությունների կողմից: Մ. Հոկտեմբերյան հեղափոխության ժամանակաշրջանում Բաքվի բոլշևիկյան կազմակերպության ակտիվ աշխատողներից էր: Նա մարտնչել է Բաքվի կոմունայի ստեղծման ու ամրապնդման համար, ընտրվել Բաքվի սովետի դեպուտատ և Բալախանիի կուսշրջկոմի անդամ. կազմակերպել է բանվորական մարտական դրուժիններ, հանդես եկել զեկուցումներով, մերկացրել բուրժուա-նացիոնալիստական կուսակցություններին: Թուրք-մուսավաթական հրոսակները գազանաբար սպանել են նրան:

Մ. հանդես է եկել նաև որպես բանվորգրող, արձակագիր և հրապարակել բազմաթիվ հոդվածներ ու պատմվածքներ, որոնց գլխավոր հերոսը բանվորն է, աշխատավոր մասսան: Մ-ի ծննդավայրում կանգնեցված է նրա կիսանդրին:

*Երկ*. Երկ., Ե., 1974:

*Գրկ*. Խանոյան Ս., Մելիք Մելիքյան (Դեդուշկա), Ե., 1928: Փիրուզյան Ա. Շ., Մելիք Մելիքյան (Դեդուշկա), Ե., 1961:

*Ա. Փիրուզյան*

**ՄԵԼԻՔՅԱՆ** Մեհենդակ Արտաշեսի [ծն. 24.12.1919, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)], հայ սովետական փիլիսոփա: ՀՍՍՀ գիտության վաստ. գործիչ (1981): Փիլ. գիտ. դ-ր (1969), պրոֆեսոր (1969): ՍՄԿԿ անդամ 1944-ից: Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին (1941—1945): Ավարտել է Երևանի համալսարանի միջազգային հարաբերությունների ֆակուլտետը (1950), 1953-ից՝ դասախոս: 1967—72-ին՝ համալսարանի պրոռեկտոր, 1970-ից՝ պատմական մատերիալիզմի և բարոյագիտության ամբիոնի վարիչ: Գիտ. աշխատությունները վերաբերում են սոցիալ-էթնիկական հանրույթների տեսության, հայ ազգի կազմավորման և սոցիալիստական վերափոխման հարցերին: Պարգևատրվել է Կարմիր աստղի 2 շքանշանով:

*Երկ*. Կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ և նրանց հաղթահարման ուղիները, Ե., 1955: Հայ ազգի կազմավորման և նրա սոցիալիստական վերափոխման հարցի շուրջը, Ե., 1957: Սոցիալիզմը և ազգերը, Ե., 1969:

**ՄԵԼԻՔՅԱՆ** Ռոմանոս Հովակիմի [19.9 (1.10).1883, Ղզլար (այժմ՝ Դաղստանի ԻՍՍՀ-ում)—30.3.1935, Թիֆլիս, թաղված է Երևանի քաղաքային պանթեոնում], հայ սովետական կոմպոզիտոր, խմբավար, երաժշտական-հասարակական գործիչ: Սկզբնական կրթությունն ստացել է Ղզլարում: 1902-ին ավարտել է Նոր Նախիջևանի թեմական դպրոցը (երաժշտության առաջին ուսուցիչն էր Գ. Չորեքչյանը): 1902—05-ին սովորել է Դոնի Ռոստովի երաժշտ. ուսումնարանում: 1906-ին ընդունվել է Մոսկվայի ժող. կոնսերվատորիան՝ Բ. Յավորսկու դասարանը: 1908—1910-ին երաժշտության ուսուցիչ է եղել Թիֆլիսի Հովնանյան դպրոցում: Թիֆլիսում Մ-ի նախաձեռնությամբ կազմակերպվել է *«Երաժշտական լիգա»*-ն: 1910—14-ին սովորել է Պետերբուրգի կոնսերվատորիայում՝ պրոֆեսորներ Վ. Կալաֆատիի (պոլիֆոնիա) և Մ. Շտեյնբերգի (գործիքավորում) դասարաններում: 1915-ին վերադարձել է Թիֆլիս: 1916-ին հատուկ պատվիրակության կազմում, որի նպատակն էր Արևմտյան Հայաստանի պատերազմից տուժած ազգաբնակչությանը օգնություն ցույց տալը, մեկնել է Վանի նահանգ: 1921-ին Սովետական Հայաստանի կառավարության հրավերով տեղափոխվել է Երևան և գլխավորել երաժշտ. ստուդիայի (1921), ապա՝ կոնսերվատորիայի (1923) կազմակերպման գործը: 1920-ական թթ. Մ. հանդես է եկել նաև որպես Հայաստանի երաժշտ. ինքնագործունեության առաջին ղեկավարներից մեկը, կազմակերպել երգչախմբեր (նաև մանկական): 1932—1933-ին նշանակվել է Երևանի նորաստեղծ օպերային թատրոնի երաժշտ. խորհրդատու:

Մ-ի ստեղծագործության մեջ կենտրոնական տեղ են գրավում երգերն ու ռոմանսները: Հայկ. ռոմանսը նա վերջնականապես ձևավորեց որպես ազգային կամերային-վոկալ երաժշտության ինքնուրույն ժանր: Նշելով ու որոշելով այդ ժանրի ազգային դւրույն ոճի կարևորագույն գծերը՝ Մ. հանդիսացավ հայ դասական ռոմանսի ստեղծողը: Մ. հայ կոմպոզիտորներից առաջինն էր, որ ազգային վոկալ երաժշտության մեջ ներգրավեց հայ ժամանակակից դասական պոեզիայի նվաճումները: Դա օգնեց կոմպոզիտորին մշակելու ազգային ռոմանսային-դեկլամացիոն մելոդիկայի բնորոշ գծերը: Մ-ի մեղեդիական ոճը, հենվելով ժող. երգի, կենցաղային և ժողովրդա-պրոֆեսիոնալ երաժշտության առանձնահատկությունների վրա՝ աչքի ընկավ նաև նոր հատկություններով. ավելի խոր անհատականությամբ, երաժշտական և ժամանակակից



Ռ. Հ. Մելիքյան



Ս. Ա. Մելիքյան

ազգային բանաստեղծական խոսքի ինտոնացիաների մերձեցմամբ: Հայկ. ռոմանսի՝ իբրև ինքնուրույն ժանրի ձևավորումը Մ-ի ստեղծագործության մեջ պայմանավորված էր նաև դաշնամուրային նվագակցության դերի նոր մեկնաբանմամբ, դրա հոգեբանական և նկարագրական առավել հագեցվածությամբ: Մ-ի հրատարակած առաջին ռոմանսը՝ «Աշնան տողեր»-ը, լույս տեսավ 1908-ին, «Գեղարվեստ» ամսագրում: Նույն շրջանին են վերաբերում նաև լայն տարածում գտած «Վարդը», «Աշուն» երգերը, «Ուռենի» զուգերգը, «Անջատում» ռոմանսը: 1908—14-ին ստեղծված գործերի զգալի մասը կազմել են «Աշնան տողեր» երգաշարը, որտեղ նըշված են հայկ. ռոմանսի տարատեսակներից մեկի՝ քաղաքային երաժշտ. ֆոլկլորի հողի վրա ծնված, հուզականորեն վառ, հոգեբանորեն հագեցած, ներքին կոնֆլիկտով ու դրամատիզմով համակված քնարական ռոմանսի առանձնահատկությունները: Նույն տարիներին նա Պետերբուրգում հրատարակել է վեց ժող. երգերի մշակումներ:



Ձեռագիր հատված Ռ. Մելիքյանի «Վայրի ծաղիկ» ռոմանսից

Մ-ի ստեղծագործության մեջ նշանակալից են «Զմրուխտի» և «Զառ-վառ» վոկալ շարքերը, որոնց համար ինտոնացիոն հիմք են ծառայել երկու գլխավոր աղբյուրներ՝ հայ ժողովրդական-գեղջկական երգը և գուսանների ստեղծագործությունը: Մ. այնպիսի նրբությամբ ու խորությամբ է վերարտադրել ժող. երգերի առանձնահատկությունները, որ անգամ իր մեղեդիներն ընկալվում են որպես բուն ժողովրդական: «Զմրուխտի»-ն (1916—18, հրտ. 1928) բովանդակությամբ քնարական է: Քնքուշ ու սրտառուչ լիրիկայի և փիլիսոփայական խոր ընդհանրացումների զուգորդության մեջ է այս երգաշարի ինքնատիպությունն ու գեղարվեստական ուժը: «Զառ-վառ» երգաշարում (1922, հրտ. 1949) գերակշռում են ժանրային-նկարագրական մոտիվները (հայրենի բնության, ժող. կենցաղի ուրվանկարներ): Հարմոնիայի ու հնչյունային կոլորիտի ասպարեզում կոմպոզիտորի հայտնագործությունները նըպաստեցին մինչև այդ ազգային երաժըշտության անծանոթ հնչյունային վառ ու զուսպ երանգապնակի ստեղծմանը: Մեծ է Մ-ի դերը նաև սովետահայ մասսայական երգի ստեղծման գործում: 1929-ին և 1930-ին Մ-ի խմբագրությամբ լույս տեսան «Պիոներական» և «Կարմիր բանակային» երգերի ժողովածուները: Այդ ասպարեզում Մ-ի ամենանշանակալի գործը «Նոր օրերի երգեր» շարքն է, որում տեղ են գտել սովետական մարդու հարուստ ներաշխարհը բացահայտող քնարական ու աշխատանքային երգեր:

Մ-ի ստեղծագործությունը խթանեց հայ կոմպոզիտորներից շատերի ստեղծագործական որոնումները: Նրա անունով է կոչվում *Երևանի երաժշտական ուսումնարանը*:

*Գրկ.* Գյոդակյան Գ. Շ., Ռոմանոս Մելիքյան: Կյանքը և ստեղծագործությունը, Ե., 1960: Թոռջյան Խ. Վ., Ռոմանոս Մելիքյան, Ե., 1960: Ռոմանոս Մելիքյան: Հոդվածներ, նամակներ, հուշեր, Ե., 1977:

*Գ. Գյոդակյան*

**ՄԵԼԻՔՅԱՆ** Սպիրիդոն Ավետիսի [18(30).11.1880, Վաղարշապատ —4.5.1933, Երևան], հայ սովետական երաժշտագետ, կոմպոզիտոր, խմբավար, մանկավարժ: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1933): 1902-ին ավարտել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանը և մինչև 1905-ը դասավանդել այնտեղ, եղել Կոմիտասի օգնական խմբավարը: 1905—08-ին Բեռլինում Ռ. Շմիդտի ղեկավարությամբ ուսումնասիրել է երաժըշտության տեսություն, խմբավարություն, մշակել է ձայնը, համալսարանում ունկնդրել փիլիսոփայություն և երաժըշտության պատմություն: 1908—09-ին որպես երգեցողության ուսուցիչ և խմբավար աշխատել է Շուշիի թեմական դպրոցում, 1909—21-ին՝ Թիֆլիսի Ներսիսյան դպրոցում, որտեղ զգալիորեն բարձրացրել է երաժշտ. ուսուցման և խմբերգեցողության մակարդակը: Թիֆլիսում ծավալել է երաժշտա-հասարակական ու լուսավորական գործունեություն՝ նախաձեռնողն ու եռանդուն մասնակիցն է եղել *Հայոց երգչախմբային ընկերության* (1917), հանդես է եկել հրապարակային դասախոսություններով, հրատարակել է երգեցողության դասագրքեր: 1921-ից աշխատել է Սովետական Հայաստանի դպրոցներում, 1924—33-ին Երևանի կոնսերվատորիայում եղել է տեսական առարկաների դասախոս և խմբավար (1930—31-ին՝ նաև ռեկտոր, 1931—32-ին՝ ուսումնական մասի վարիչ), 1927-ին կոնսերվատորիայի երգչախմբի համերգներով մեծ հաջողությամբ հանդես է եկել Մոսկվայում, ՍՍՀՄ ժողովուրդների արվեստի ցուցահանդեսում: 1926-ից ընտրվելով ՀԽՍՀ գիտության և արվեստի ինստ-ի իսկական անդամ, զբաղվել է նաև ժող. երգեր հավաքելով:

Մ-ի ստեղծագործություններն են՝ «Ախթամար» (ըստ Հ. Թումանյանի) բալլադը երգչախմբի և սիմֆոնիկ նվագախմբի համար և Ա. Իսահակյանի բանաստեղծություններով երգեր (անտիպ), ժող. երգերի մշակումներ («Մեներգեր և խմբերգեր», 1955), որոնցից մի քանիսը՝ «Թիկնոդա», «Պլիբի», «Մամբել», «Քելեր, ցոլեր», հաստատուն տեղ են գրավել երգչախմբային երկացանկերում: Երաժշտա-պատմական և տեսական աշխատություններում («Հունական ազդեցությունը հայ երաժշտության տեսականի վրա» (1914), «Հայ ժողովրդական երգի գամմաներ» (1930), «Կոմիտասի ստեղծագործությունների անալիզը» (1932) տեղ են գտել մեթոդաբանական և փաստական էական վրիպումներ: Հայ երաժշտության ամբողջական զարգացումն ամփոփելու մի փորձ է «Ուրվագիծ հայ երաժշտության պատմության» (1935) աշխատությունը:

Մ-ի երաժշտագիտական ժառանգության կարևորագույն հատվածը ժող. երգերի ժողովածուներն են՝ «Շիրակի երգեր» (1917, հավաքված 1914-ին՝ Ա. Տեր-Ղևոնդյանի մասնակցությամբ) և «Հայ ժողովրդական երգեր և պարեր» (հ. 1—2, 1949—52), որոնց նյութերը բազմիցս օգտագործել են կոմպոզիտորներն ու երաժըշտագետները: Մ. կազմել և իր առաջաբանով հրատարակել է իր աշակերտ Գ. Գարդաշյանի գրառած «Վանա ժողովրդական երգեր»-ը (պրակ 1—2, 1927—1928): Գործնական անգնահատելի նշա-



Ս. Մելիքյանի ինքնագիրը

նակություն է ունեցել նրա կողմից Կոմիտասի «Ազգագրական ժողովածու»-ի հրատարակումը (1931), որը Կոմիտասի հանձնարարությամբ նա արտագրել էր 1904-ին, իսկ բնագիրը համարվում էր կորած: Մ-ի երաժշտական-ազգագրական, կատարողական և մանկավարժական գործունեությունը նշանակալից ներդրում էր հայ երաժշտության զարգացման մինչսովետական վերջին և սովետական շրջանի առաջին տասնամյակների մեջ:

*Երկ.* Հոդվածներ, հուշեր, նամակներ, փաստաթղթեր, Ե., 1964 (կազմ. Մելիքյան Ս.):

*Գրկ.* Թաղևոսյան Ա., Սպիրիդոն Մելիքյանը և հայ ժողովրդական երգը, Ե., 1964: Մուրադյան Մ., Հայ երաժշտությունը XIX դարում և XX դարասկզբում, Ե., 1970:

*Ռ. Աթայան*

**ՄԵԼԻՔՅԱՆՑ** (Մելիքով) Պողոս Մովսեսի (1777, Աստրախան — 1848, Մոսկվա), ռուսական բանակի գեներալ-մայոր (1819): Ծնվել է մանր ազնվականի ընտանիքում: 1796-ից անցել է զինվորական ծառայության: Մասնակցել է ռուս-ավստրո-ֆրանսիական (1805), ռուս-պրուսա-ֆրանսիական (1806—1807), ռուս-շվեդական (1808—1809) պատերազմներին: Աչքի է ընկել Կրեմսայի (Ավստրիա), Լոնդսբերգի, Բալթուսի (Լեհաստան), Ֆրիդլանդի (Պրուսիա), Պրեյսիշ-Էյլաուի (այժմ՝ Բագրատիոնովսկ, Կալինինգրադի մարզում) մարտերում: Ֆրիդլանդի ճակատամարտում (1807-ի հունիսին) ցուցաբերած հերոսության համար պարգևատրվել է Ոսկյա սրով: 1812-ի Հայրենական պատերազմի ժամանակ մասնակցել է Սմոլենսկի, Վյազմայի, Վիտեբսկի մատույցներում մղված կռիվներին և Բորոդինոյի ճակատամարտին, այնուհետև՝ ռուս. բանակի 1813—14-ի արտասահմանյան արշավանքին, պարգևատրվել է Ս. Վլադիմիրի և Ս. Աննայի 2-րդ աստիճանի ու դաշնակից պետությունների շքանշաններով: 1816—1823-ին եղել է Բաքվի ամրոցի պարետը: 1830-ին թողել է զինվորական ծառայությունը: Մասնակցել է Մոսկվայի հայ գաղութի հասարակական կյանքին և Լազարյան ճեմարանի աշխատանքներին: Մ-ի նախաձեռնությամբ և նյութական օժանդակությամբ է հիմնադրվել Մոսկվայի հայոց «Գասպարյան աղքատանոց»-ը (1841), որին և կտակել է իր դրամական խնայողությունները:

*Գրկ.* Կեռքչյանց Հ., Ծանոթություն հաղագս կենաց զորագլխի Պողոսի Մովսիսյան Մելիքյանց, Մ., 1852: Нерсисян М. Г., Отечественная война 1812 года и народы Кавказа, Е., 1965.

*Հ. Խաչատրյան*

**ՄԵԼԻՔՇԱՀՅԱՆ** Պողոս, Ֆիզիկա Պողոս [1788, Կըրգաղաճ (Իզմիրի մոտ)— 10.6.1855, Կ. Պոլիս], հայ փիլիսոփա, մանկավարժ, հասարակական գործիչ: Նախնական կրթությունը ստացել է ծննդավայրում ապա՝ Իզմիրում (Հովնան Վանանդեցու մոտ): 1808-ին մեկնել է Կ. Պոլիս, ինքնուրույն ուսումնասիրել բնական գիտություններ ու փիլիսոփայություն («Ֆիզիկա» մականունը ստացել է բնական գիտությունների խոր իմացության համար): 1811-ից զբաղվել է մանկավարժությամբ, դասավանդել (Կ. Պոլսում, Մուշում, Երուսաղեմում և այլուր) բնագիտություն, փիլիսոփայություն, ճարտասանություն, բառոյագիտություն: Մ-ի մանկավարժական սկզբունքները հակադրվել են ուսուցման սխոլաստիկական պահանջներին: Կղերաամիրայական վերնախավի և սուլթանիզմի դեմ մղած պայքարի համար հալածվել է, 1839-ին որպես էսնաֆական շարժման մասնակից և անաստված աքսորվել Կեսարիա (վերադարձել է թանզիմաթի հրապարակումից հետո): Մ-ի բնակարանի խուզարկման ժամանակ ոչնչացվել է 16 աշխատություն:

Մ. «Տրամաբանություն» (հ. 1, 2 հրտ., 1877) աշխատության մեջ փիլիսոփայության հիմնական հարցը լուծում է դեիզմի շրջանակներում: Հակադրվելով տիեզերական արարչագործության աստվածաշնչյան մեկնաբանությանը, ելնելով ձևավորվող էվոլյուցիոնիզմի և պատմականության սկզբունքներից՝ նա գտնում է, որ աշխարհը բնական ճանապարհով առաջացել է փոշենման նախանյութից. վերջինս բաղկացած է հավիտենական ու անփոփոխ տարրերից (ատոմներից), որոնք նաև բնության բազմազանության հիմքն են, շարժման ու փոփոխության պատճառը: Մ. փորձել է տալ շարժման տեսակների դասակարգումը («տեղական» շարժում, «գոյացման» շարժում):

Իմացաբանական պրոբլեմատիկայի քննարկման ժամանակ ակնհայտ է դառնում Մ-ի մատերիալիստական կողմնորոշվածությունը: Ըստ նրա, յուրաքանչյուր փիլ. համակարգ իմացաբանորեն կապված է հոգեկանի և մարմնականի հարաբերակցության հետ: Այս հարցի ելակետը, ըստ Մ-ի, Պլատոնի և Արիստոտելի ուսմունքներն են: Հոգու և մարմնի փոխհարաբերության հարցը լուծելիս Մ. հակադրվում է Պլատոնի իդեալիզմին, հակվում դեպի Արիստոտելը: Մ. հոգու (հոգեկանի) ճանաչողական գործունեությունը բացատրում է նյութականի՝ ուղեղի ու զգայությունների միջոցով:

Մ. փորձում է պարզել նաև գիտական իմացության օբյեկտը, նրա միջոցներն ու հնարները: Գոյը նա բաժանում է «նյութեղենի» («երևելիի») և «հոգեղենի» («աներևույթի»): Առաջինը ճանաչվում է գիտությամբ ու փիլիսոփայությամբ, երկրորդը՝ հավատով ու աստվածաբանությամբ: Այսպիսի ըմբռնումը հայ իրականության մեջ դեռևս ուներ առաջադիմական, հակաստվածաբանական բնույթ, առավել ևս, որ Մ. նախապատվությունը տալիս էր գիտության ճշմարտություններին:

Գիտական իմացության գլխավոր խնդիրը Մ. համարում է այն, թե ինչպես է մարդը ճանաչում աշխարհը: Այս առիթով նա վերլուծում է ճանաչողության զգայական ու տրամաբանական միջոցները և դրանց հարաբերակցության հարցը: Ըստ Մ-ի, թեև գիտելիքը ունի փորձնական ծագում, և ճանաչողությունը սկսվում է զգայությամբ, իմացության բարձրագույն աստիճանը տրամաբանականն է: Մ. գերագնահատում է իմացության բնական եղանակը, ինչպես նաև տեղ է տալիս ներքին փորձին, որը ոչ մի առնչություն չունի արտաքին աշխարհի հետ և ուղղված է աննյութական, հավիտենապես անմահ հոգու ճանաչողությանը: Այսպիսով, նա հերքում է գաղափարների փորձնական ծագում ունենալու մասին իր պաշտպանած էմպիրիստական մոտեցումը, հատկապես, երբ պնդում է, որ էության ու պատճառի մասին գիտելիքները տրված են նախօրոք, իսկ համընդհանուր և անհրաժեշտ գիտելիքները փորձնական ծագում չունեն:

*Գրկ.* Հարությունյան Էդ., Հայ փիլիսոփայական միտքը XIX դարի առաջին կեսին, Ե., 1965:

*Է. Ուշտունի, Ս. Իսրայելյան*

**ՄԵԼԻՔ-ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆ** Կոստանդին Կարապետի, Տմբլաշի Խաչան [17(29).4.1857, Շուշի —10.7.1940, Երևան], հայ գրող, գյուղատնտես: ՀՍՍՀ վաստ. գյուղատնտես (1924): 1874—78-ին սովորել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանում, 1883—1885-ին՝ Մոնպելիեի (Ֆրանսիա) բարձրագույն գյուղատնտ. ուսումնարանում: Որպես գյուղատնտես աշխատել է Դերբենդում, Գանձակում, Եվլախում, Բաքվում, Էջմիածնում և այլուր: 1919-ից հաստատվել է Հայաստանում, աշխատել գյուղատնտեսության բնագավառում, հանդես եկել «Գյուղատնտես», «Գյուղատնտեսական կյանք» և այլ պարբերականներում: Հրատարակել է 30-ից ավելի գրքեր ու գրքույկներ՝ «Ուղեցույց գործնական գինեգործության» (1885), «Ուղեցույց գործնական շերամապահության» (1890), «Ռուսահայերի գյուղատնտեսության վիճակը և գյուղատնտեսական դպրոցների կարիքը» (1908), «Ծխախոտի մշակությունը» (1925), «Ինչպես ոչնչացնել մրիկը» (1930) ևն:

Վաղ հասակից գրել է բանաստեղծություններ: Սակայն նրան ճանաչում են բերել «Նոր դար» թերթում Տմբլաշի Խաչան ստորագրությամբ Ղարաբաղի բարբառով գրված ֆելիետոնները, «Ղըլըջե կնանոց պընըփեշակը» (1882), «Շոշվա դալին խերն ու շառը» (1887) երգիծական գործերը, «Տնգլբազ և Զուռնա-Տմբլա» (1900), «Զուռնա-Տմբլա» (1901) ֆելիետոնների գրքերը, որոնցում ծաղրել է ազգային կեղծ բարերարներին, հարստահարողներին, քաղքենի վերնախավին: Գրել է նաև Ղարաբաղի հայերի վերաբերյալ ազգագրական հոդվածներ:

*Գրկ.* Հայ նոր գրականության պատմություն, հ. 4, Ե., 1972: Կոստանդին Կարապետի Մելիք-Շահնազարյան, Ե., 1924:

*Հ. Դավթյան*

**ՄԵԼԻՔ-ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆ** Սողոմոն Կարապետի (3.7.1862, Շուշի —1942, Թիֆլիս), հայ գյուղագիր: 1883-ին ավարտել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանը: Ուսուցիչ է եղել Ագուլիսում, Գանձակում, Դերբենդում, Բաքվում: Աշխատակցել է «Մուրճ» ամսագրին: Հրատարակել է երկու վիպակ: Դրանցից մեկը («Հայ գյուղացու սև օրը», 1890) պատկերում է գյուղացի պանդուխտների, մշակների կողոպտումն ու բարոյազրկումը բուրժ. քաղաքում, մյուսը («Գործակատար Մարտիրոսը», 1913)՝ սոցիալական չարիքի դեմ մաքառելուց հրաժարված գյուղական մտավորականի խարխափումները՝ արդարության ու ճշմարտության ճանապարհին:

**ՄԵԼԻՔ-ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆՆԵՐ**, Շահնազարյաններ, հայ մելիքական տոհմ Արցախում, XVI դ. վերջին —XIX դ. սկզբին: Սերել են *Դոփյանների* իշխանական տոհմից: Առաջին ճյուղի տիրույթներն էին Սոդք գավառը՝ Մեծ Մազրա մելիքա-

նիստ ավանով, և Գեղարքունիք գավառի մի մասը (Սևանա լճի հվ-արլ. ափը): Սողքի Մ-Շ-ի այս տոհմը Դոփյաններից առանձնացել է դեռևս XV դ., սակայն մելիքական տիտղոսին ժառանգաբար տիրելու իրավունք տոհմը ձեռք է բերել միայն Մելիքբեկի որդի Շահնազար Ա Մեծի օրոք (իշխել է 1580-ական թթ.—1606): Շահնազար Ա պարբերաբար հաջող մարտեր է մղել Օսմանյան կայսրության և կովկասյան ասպատակիչ ցեղերի ոտնձգությունների դեմ և մեծ հեղինակություն վայելել շահ Աբբաս I-ի արքունիքում: Վերջինիս հրամանով օրինականացվել է Շահնազար Ա-ի մելիքական իրավունքը, և տոհմը կոչվել է նրա անունով: Նրա հաջորդներից մելիքական տիտղոսի են արժանացել Քամալբեկը (XVII դ. 1-ին կես), Աստվածապովը (XVII դ. կես), Մելիքբեկը (XVII դ. 2-րդ կես), Մելիք-Շահնազար Բ (XVII դ. վերջին քառորդ): XVIII դ. աչքի են ընկել *Մելիքջանը*, նրա որդի *Մանուչարը* և ուրիշներ:

Մ-Շ-ի մյուս՝ Վարանդայի ճյուղի տիրույթները, Ավետարանոց (այժմ՝ Չանախչի, ԼՂԻՄ Ասկերանի շրջանում) իշխանանիստով, տարածվել են հին Բերդաձոր գավառից (համընկնում է ներկայիս ԼՂԻՄ Շուշիի շրջանին) մինչև Մուխանք գավառը (Մուղանի դաշտ): Ենթադրվում է, որ Վարանդայում 1603-ին շահ Աբբաս I-ի հրամանով մելիք կարգված Միրզաբեկը, Սողքի մելիք Շահնազար Ա-ի տոհմակիցն է: Միրզաբեկին Վարանդայում հաջորդել է նրա որդի Բաղին (Բաղըխան, Բաղըրխան), սրան էլ՝ իր որդի Շահնազարը, որի անունով գավառապետական այս տիրակալությունը ևս կոչվել է Մելիք-Շահնազարյան: Պահպանվել է շահ Աբբաս II-ի 1646-ին գրած հրովարտակը, որով Բաղիի որդի Շահնազարը հաստատվել է Վարանդայի մելիք:

ԼՂԻՄ Մարտունու շրջանի Հերհեր գյուղում պահպանված մի վիմագրի համաձայն՝ 1673-ին Վարանդայի մելիքն էր Շահնազար Ա: Նրան հաջորդել է որդին՝ մելիք Հուսեինը (իշխել է մինչև 1736-ը), որը նշանավոր է օսմանյան թուրքերի դեմ մղած մի շարք հաջող ճակատամարտերով: Հայտնի է նաև Հուսեինի դուստր Գայանեն, որի խիզախության շնորհիվ մի գիշերում ոչնչացվել է Արցախ թափանցած օսմանյան զորաջոկատը: Մելիք Հուսեինի որդի Հովսեփը եղել է ուսումնասեր, բայց թույլ գավառապետ, և վերջինիս կրտսեր եղբայր Շահնազարը, հակառակ Արցախի մյուս մելիքների, իրեն հայտարարել է մելիք: Արցախում գերագահություն նվաճելու նպատակով Շահնազարը (Շահնազար Բ) դաշնակցել է վաչկատուն սարըջալի ցեղի գլխավոր Փանահի հետ, 1750-ական թվականներին նրան հանձնել Շոշի բերդը: Շահնազար Բ-ի աջակցությամբ Փանահն իրեն հայտարարել է Ղարաբաղի խան և վարել թշնամական քաղաքականություն Արցախի ու հարևան գավառների հայության նկատմամբ: Կյանքի վերջին տարիներին Շահնազար Բ զղջացել է, փորձել հաշտվել հարևան հայ մելիքների հետ, նույնիսկ նրանց հետ ռուս. կայսրին ուղղված թուղթ ստորագրել՝ ռազմ. օգնության խնդրանքով, սակայն ժողովուրդը չի ներել նրան, և մեղքերը քավել փորձող դավաճանի մասին հյուսել է երգիծական ավանդություններ: Շահնազար Բ-ի որդի մելիք Ջումշուդն ու մյուս հաջորդները դաշնակցել են հայ մելիքներին, կռվել պարսիկ և թուրք բռնակալների դեմ: Մ-Շ-ի վերջին պայազատները եռանդուն մասնակցություն են ունեցել ռուս-պարսկական պատերազմներին:

Մ-Շ-ի երկու ճյուղերն էլ իրենց տիրույթներում մելիքական իրավունքով իշխել են մինչև Ռուսաստանին վերջնականապես միանալը:

*Գրկ.* Տ ե ր-Մ կ ր տ չ յ ա ն Կ. [Կարապետ եպիսկոպոս], Դոփյանք և Մելիք-Շահնազարյանք, Էջմիածին, 1914 (Նյութեր հայ մելիքության մասին, պր. 2): Ր ա ֆ ֆ ի, Խամսայի մելիքությունները (1600—1827), Երկ. ժող., հ. 10, Ե., 1959: Լ և ո, Երկ. ժող., հ. 3, գիրք 2, Ե., 1973: Ու լ ու բ ա բ յ ա ն Բ., Խաչենի իշխանությունը X—XVI դարերում, Ե., 1975.
*Բ. Ուլուբաբյան*

**ՄԵԼԻՔ-ՇԵՐԻՖ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Կերճանիսի գավառում: 1909-ին ուներ 421 (42 ընտանիք) հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Գյուղում կար եկեղեցի (Ս. Գևորգ): Գյուղի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է զաղթի ճանապարհին, Կամախի կիրճում:

**ՄԵԼԻՔՋԱՆ** Մելիք-Շահնազարյանց (ծն. և մահ. թթ. անհտ.), Գեղարքունիքի մելիք 1720—30-ական թթ.: Նադիրկուլի խանի (հետագայում՝ Նադիր շահ) իրանական բանակի կազմում իր զորքով կռվել է Անդրկովկաս ներխուժած օսմանյան թուրքերի դեմ: Փոխարենը Նադիր շահը վերահաստատել է Մ-ի մելիքական իրավունքները Գեղարքունիքում (Գողչա): Ըմբոստացել է Երևանի բեկլարբեկի դեմ, որի համար մահապատժի է ենթարկվել: Մ-ին հաջորդել է որդին՝ *Մանուչար* Մելիք-Շահնազարյանը:

*Գրկ.* Լ և ո, Երկ. ժող., հ. 3, գիրք 2, Ե., 1973:
*Հ. Փափազյան*

**ՄԵԼԻՔՋԱՆԼՈՒ**, Մ ը ր ը շ կ ա զ լ ու, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Հադրութի շրջանում, Բլութան գետակի աջ ափին, շրջկենտրոնից 16 *կմ* արևելք: Միավորված է Բլութանի կոլտնտեսության հետ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան: Մ-ում պահպանվել է Ս. Աստվածածին եկեղեցին (XVIII դ.), շրջակայքում՝ հին գերեզմանատուն, ավերակ գյուղատեղի: Միջնադարում եղել է խոշոր իջևանատուն Ստեփանակերտ—Հադրութ ճանապարհի վրա:

**ՄԵԼԻՔՍԵԹ ԿԱԶՄՈՂ**, Մ ե լ ի ք ս ե թ Կ ա զ մ ո ղ (ծն. և մահ. թթ. անհտ.), XVI դ. քանդակազարդող հայ վարպետ, խաչքարեր կազմող: Ստեղծագործել է հիմնականում Նոր Բայազետի (այժմ՝ Կամո) շրջանում, 1541—95-ին: Մ. Կ-ի ստորագրությամբ հայտնի խաչքարերը գտնվում են Կարմիրգյուղում՝ Ս. Աստվածածին եկեղեցու արլ. կողմում, պարսպի տակ (1541) և արմ. պատի մեջ, մուտքից վեր (1567), երկուսը՝ Ս. Գևորգ կիսավեր եկեղեցու հվ. պատի տակ (1546 և 1549), Սարուխանի գյուղամիջի մատուռի ներսում, հս. պատի մեջ ագուցված (1549), Հրազդանի շրջանի Ծաղկունք գյուղում՝ Ս. Հարություն եկեղեցու հվ. պատի տակ (1553), Նորադուզ գյուղում՝ Ս. Աստվածածին եկեղեցու հվ-ում, այլ խաչքարերի շարքում (զույգ խաչքար, 1555 թ. և անթվակիր), ամենաուշ թվագրվածը (1595)՝ գավթի արլ. մուտքի ճակատին, Բջնիի Ս. Աստվածածին եկեղեցու բակում՝ մեկը արլ. պատի մոտ, մյուսը՝ պարսպի հս-արլ. անկյունին (1580 և անթվակիր) ու Նոր Բայազետի Ս. Կարապետ եկեղեցու արլ. պատի



Մ ե լ ի ք ս ե թ Կ ա զ մ ո ղ. խաչքար (XVI դ., Նորադուզ գյուղ, ՀՍՍՀ Կամոյի շրջան)

կենտրոնում: Մ. Կ-ի խաչքարերին բնորոշ է նեղ քիվը, լայն ճակատը, որի կենտրոնում, խորանի մեջ խաչն է, շրջանակները լայն են, քառակուսիներով, արձանագրությունը մեծ մասամբ քիվի վրա է, իսկ ուռուցիկ տառերով ստորագրությունը՝ խորանի վերին երկու կողմերին: Զարդաքանդակները չափազանց նուրբ են, ոճավորված: Մ. Կ. Նոր Բայազետի շրջանում գործող XVI դ. ամենանշանավոր կազմող արվեստագետներից է:

*Գրկ.* Բ ա ր խ ու դ ա ր յ ա ն Ս., Միջնադարյան հայ ճարտարապետներ և քարգործ վարպետներ, Ե., 1963:

**ՄԵԼԻՔՍԵԹ-ԲԵԿ** Լևոն (Լեոն) Մելիքսեթի (26.9.1890—3.9.1963, Թբիլիսի), հայ սովետական պատմաբան, բանասեր, մատենագետ, հնագետ: ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ (1945): Ավարտել է Թիֆլիսի ռեալական ուսումնարանը (1908), Օդեսայի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը (1913): 1913—21-ին աշխատել է Թիֆլիսի տարբեր ուս. հաստատություններում, հնագիտական ու ազգագրական ընկերություններում: 1922-ից եղել է Թիֆլիսի համալսարանի հայկ. բանասիրության ամբիոնի դոցենտ, ապա՝ անփոփոխ վարիչը: Հայագիտական ու վրացագիտական առարկաներ է դասավանդել Թիֆլիսի, Բաքվի, Երևանի համալսարաններում ու ինստ-ներում, մասնակցել է հնագիտական գիտարշավների: 1913-ից աշխատակցել է Ն. Մառի խմբագրած «Քրիստոնեական Արևելք» («Христианский Восток») հանդեսին: Հրապարակել է բազմաթիվ


Լ. Մ. Մելիքսեթ-Բեկ

աշխատություններ, հոդվածներ (հայ., վրաց., ռուս.) են: Նշանավոր է «Վարդապետք Հայոց Հյուսիսային Կողմանց» (վրաց., 1928) երկը, որում քննել է XI—XIII դդ. հայ-վրացական պատմական, մշակութային ու մատենագրական հարաբերությունները: 1941-ին հրատարակել է «Հայոց հին գրականության պատմություն» ձեռնարկը (վրաց.): Հայագիտության կարևոր նվաճումներից է «Վրաց աղբյուրները Հայաստանի ու հայերի մասին» (հայ., h. 1—3, 1934—55) աշխատությունը, որում վրաց. աղբյուրներից քաղված բնագրերի թարգմանությունն ուղեկցվում է պատմա-բանասիրական, աղբյուրագիտական ծանոթագրություններով են: Կատարել է նաև բնագրական հրապարակումներ, որոնցից առավել նշանակալի են Գրիգոր Պարթևի «Վարքի», Մխիթար Գոշի «Դատաստանագրքի» և Ստեփանոս Օրբելյանի «Պատմության» ընդարձակ համվածի XIII դ. վրաց. թարգմանություններն հետազոտությունն ու տպագրությունը: Ուսումնասիրել է Թիֆլիսի շրջակայքի հայկ. հնությունները, Արմազիի, Թռեղքի, Սևանի, Գարեջնայի պատմա-ճարտարապետական հուշարձանները: Խոշոր ծառայություն է մատուցել կովկասագիտությանը «Մեգալիթյան մշակույթը Վրաստանում» (1938, վրաց.), «Վրաստանի պատմության գրավոր աղբյուրների հրապարակումները» (1942, վրաց.) և «Մեգալիթյան մշակույթը Վրաստանում և նրա վերապրուկները Ռուսթավելու դարաշրջանում» (1943, վրաց.) արժեքավոր աշխատություններով: Զբաղվել է նաև հայ ու վրաց գրականությունների պատմությամբ, կատարել թարգմանություններ հայերենից վրացերեն և հակառակը:

*Երկ.* Полная библиография печатных работ по арменоведению, грузиноведению, кавказоведению Л. Меликсет-Бека за 1909—1960 гг., Тб., 1960.

*Գրկ.* Մուրադյան Պ., «Լևոն Մելիքսեթ-Բեկ», «Տեղեկագիր ՀՍՍՀ ԳԱ, հաս. գիտ.», 1963, № 11: *Պ. Մուրադյան*

**ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ** Խաչիկ Հմայակի [1920, գ. Սաչլու (այժմ՝ Նորաշեն, ՀՍՍՀ Ապարանի շրջանում)—1974, Երևան], հրետանավոր, Փառքի երեք աստիճանի շքանշանների ասպետ (12.12.1943, 22.1.1944, 24.3.1945): ՍՄԿԿ անդամ 1942-ից: 1940-ին զորակոչվել է կարմիր բանակ: Հայրենական մեծ պատերազմի ժամանակ մասնակցել է Ստալինգրադի, Կուրսկի, 1944-ից՝ Նևել, Մեմել (այժմ՝ Կլայպեդա), Քյոնիգսբերգ (այժմ՝ Կալինինգրադ) քաղաքների ու այլ բնակավայրերի ազատագրման և Արևմտյան Դվինայի գետանցման մարտերին: Ցուցաբերած արիության համար Մ. պարգևատրվել է նաև Լենինի, Հայրենական պատերազմի II աստիճանի շքանշաններով:

*Գրկ.* Սահակյան Մ., Գվարդիական զինվոր Խաչիկ Մելիքսեթյանի մարտական ուղին, «ԲՀԱ», 1970, № 2: *Ռ. Գրիգորյան*

**ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ** Սամվել Գրիգորի (ծն. 15.12.1907, գ. Գյոլխանա, Կարսի մարզ), հայ սովետական անասնաբույժ, զինվորական ծառայության գնդապետ (1954-ից՝ պաշտոնաթող): Անասնաբուժ. գիտ. դ-ր (1962), պրոֆեսոր (1964): ՍՄԿԿ անդամ 1939-ից: Ավարտել է Երևանի անասնաբուծական-անասնաբուժական ինստ-ը (1933): 1933—54-ին ծառայել է սովետական բանակում: 1964-ից Երևանի անասնաբուծական-անասնաբուժական ինստ-ի վիրաբուժության ամբիոնի պրոֆեսոր: Գիտական աշխատանքները վերաբերում են գյուղատնտ. կենդանիների վիրաբուժական տարբեր հիվանդությունների կանխարգելման և բուժման խնդիրներին: 1935—40-ին պրոֆեսոր Ա. Վելլերի հետ (Լենինգրադ) մշակել է վիրահատմամբ ձիերի աղիքային քարերի հեռացման նոր մեթոդ, ստեղծել խոշոր եղջերավոր կենդանիների նախաստամոքսների վնասվածքների կանխարգելման և բուժման սարքերի համալիր (տես *Մագնիսային կոնդ և օղակ*): Պարգևատրվել է Կարմիր դրոշի, Հայրենական պատերազմի I աստիճանի և Կարմիր աստղի 3 շքանշաններով:

*Երկ.* Магнитный зонд, М., 1964.

**ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ** Սարգիս Ալեքսանդրի [18.8(5.9).1899, Գանձակ —3.11.1980, Երևան], հայ սովետական թատերագետ: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1956), արվեստագիտության դ-ր (1971): Եղել է Երևանի Առաջին (այժմ՝ Սունդուկյանի անվ.) պետ. թատրոնի դերասան (1922—1924): 1935—49-ին թատրոնի պատմություն է դասավանդել Երևանի թատերական ուսումնարանում և թատերական


Ս. Ա. Մելիքսեթյան

ինստ-ում: 1935-ին կազմակերպել է *Երևանի թատերական թանգարանը*: 1953-ից աշխատում է ՀՍՍՀ Գրականության և արվեստի թանգարանում (1963-ից՝ դիրեկտոր): Հեղինակ է մի շարք գրքերի՝ «Քիթ Մաթոն» (վիպակ, 1925), «Մեր թատրոնի ուղին» (ռուս., 1941), «Թատերական ակնարկներ» (1945), «Հովհաննես Աբելյան» (1954), «Ուրվագիծ սովետահայ թատրոնի պատմության» (1960), «Մեծ արվեստի ուժը» (1968, ժող.), «Կյանք և բեմ» (1970, ժող.), «Շեքսպիրը և մերոնք» (1974, ժող.) են: Կազմել և առաջաբանով ու ծանոթագրությամբ հրատարակել է Գ. Չմշկյանի «Իմ հիշատակարանը» (1953): Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով: *Բ. Հովակիմյան*

**ՄԵԼԻՔ-ՍՏԵՓԱՆՅԱՆ** Արամ Մաթևոսի (ծն. 22.3.1908, Սարիղամիշ), կինոտեխնիկայի բնագավառի հայ սովետական գիտնական: Տեխ. գիտ. դ-ր (1965), պրոֆեսոր (1963): Ավարտել է Մոսկվայի լենինյան ինստ. (1931): 1931—34-ին աշխատել է Մոսկվայի կինո-ֆոտո ԳՀԻ-ում, 1937-ից՝ Լենինգրադի կինոինժեներների ինստ-ում: Հայրենական մեծ պատերազմի տարիներին եղել է Երևանի կինոստուդիայի գլխավոր ինժեները: Աշխատանքները վերաբերում են ժապավենաձիգ մեխանիզմների (կինոժապավենի շարժման արագության կայունարարներ, փաթաթող հարմարանքներ են) տեսությանը, հնչյունային սարքավորումների կառուցվածքի կատարելագործմանն ու զարգացմանը: Մ-Ս. կինոսարքավորման բազմաթիվ արդ. կոնստրուկցիաների հեղինակ է: Մասնակցել է ֆիլմերի հնչյունավորման նոր մեթոդի մշակմանը: ՍՍՀՄ պետ. մրցանակ (1950):

*Երկ.* Детали и механизмы киноаппаратуры (Учебник для втузов), М., 1959 (հեղինակակից С. М. Проворнов); Звукозаписывающая аппаратура, Л., 1972.

**ՄԵԼԻՔ-ՍՏԵՓԱՆՅԱՆ** Սմբատ Անդրեասի [1(13).8.1881, գ. Առաջաձոր (այժմ՝ Ղափանի շրջանում)—1937], հայ լեռնային ինժեներ: Ավարտել է Ֆրայբերգի լեռնային ակադեմիան (1904): 1906—09-ին մասնակցել է Ղափանի հանքավայրերի հետազոտման աշխատանքներին: 1906—16-ին եղել է Ղափանի լեռնաարդյունաբերական ընկերության հանքերի վարիչ, ապա՝ դիրեկտոր, 1921-ին նշանակվել է Ղափանի արտակարգ կոմիսար: Զանգեզուրում սովետական կարգերի հաստատումից (1921-ի հուլիս) հետո Մ-Ս. ընտրվել է Զանգեզուրի հեղկոմի անդամ: 1924-ին եղել է Ղափանի պղնձահանքերի վերականգնման աշխատանքների ինժեներ, մասնակցել հանքերի շահագործման 10-ամյա պլանի մշակմանը: 1933-ից՝ Զանգեզուրի Ս. Շահումյանի անվ. պղնձահանքերի վարիչ:

**ՄԵԼԻՔՈՒԹՅՈՒՆ**, XVI—XVIII դարերի ֆեոդալական մանր իշխանության վարչաձև Արևելյան Հայաստանում: Նշանավոր են եղել Մելիք-Շահնազարյանների Վարանդայի, Գեղարքունիքի, Մելիք-Բեգլարյանների՝ Գյուլիստանի, Մելիք-Իսրայելյանների՝ Ջրաբերդի, Հասան-Ջալալյանների՝ Խաչենի, Մելիք-Եգանյանների՝ Դիզակի Մ-ները: XVII դ. վերջերից Արցախի Մ-ները, Ռուսաստանի օգնությամբ, փորձել են թոթափել իրանական լուծը: XVIII դ. 20-ական թթ. զործում մասնակցություն են ունեցել ազատագր. կռիվներին: 1724—1735-ին Արցախի Մ-ները հերոսական պայքար են մղել Անդրկովկաս ներխուժած թուրք. զորքերի դեմ, ինքնաբերաբար դաշնակից դառնալով Իրանին: Հաշվի առնելով այդ, Իրանի Նադիր շահը ճանաչել է Արցախի Մ-ների ինքնիշխան վիճակը և հաստատել նրանց դաշնակցային ինքնավարությունը՝ «մահալ-ե խամսե» (հինգ մահալ) անունով (տես *Խամսայի մելիքություններ*):

*Գրկ.* տես *Մելիք* հոդվածի գրականությունը: *Հ. Փափազյան*

**ՄԵԼԻՔ-ՓԱՇԱԵՎ** (Մելիք-Փաշայան) Ալեքսանդր Շամիլի [10(23).10.1905, Թիֆլիս —18.6.1964, Մոսկվա], հայ սովետական դիրիժոր։ ՍՍՀՄ ժող. արտիստ (1951)։ Սկզբնական երաժշտական կրթությունն



Ա. Շ. Մելիք-Փաշաև

ստացել է տանը, աշակերտելով պրոֆ. Հարտմանին (տեսություն) և Շվեյգերին (դաշնամուր)։ 1921-ին ընդունվել է Թիֆլիսի օպերային թատրոն (ընդհատումներով աշխատել է մինչև 1931-ը) որպես կոնցերտմայստեր, ապա՝ դիրիժոր, 1923-ին հանդես գալով Դոլիձեի «Լեյլա» օպերայի կատարմամբ։ 1924-ին Լենինականի օպերա-օպերետային խմբում վարել է հայերեն լեզվով ներկայացումներ (Գունոյի «Ֆաուստ», Բիզեի «Կարմեն», Չայկովսկու «Եվգենի Օնեգին»)։ 1929-ին և 1932-ին սիմֆոնիկ համերգներով հանդես է եկել Երևանում։ 1928—30-ին ուսանել է Լենինգրադի կոնսերվատորիայում՝ Ն. Մալկոյի, այնուհետև Ա. Գաուկի դիրիժորական դասարաններում, տեսությունը՝ Ք. Քուշնարյանի և Վ. Շչերբաչովի մոտ։ 1931-ից ՍՍՀՄ *Մեծ թատրոնի* դիրիժոր էր, 1953—62-ին՝ գլխավոր դիրիժորը։ Մ-Փ-ի երկացանկն են կազմել 50-ից ավելի օպերաներ։ Նրան առանձնապես հաջողվել են մոնումենտալ, բազմապլանային, դրամատիզմով և սիմֆոնիկ լայն շնչով հագեցված ներկայացումներ։ Անգերազանցելի են համարվում Մեծ թատրոնում նրա ղեկավարած՝ Վերդիի «Աիդա», «Օթելլո», «Ֆալստաֆ», Բիզեի «Կարմեն», Բեթհովենի «Ֆիդելիո», Պրոկոֆևի «Պատերազմ և խաղաղություն» օպերաները։ Ստեղծագործական նվաճումներից են Գլինկայի «Իվան Սուսանին», Բորոդինի «Իշխան Իգոր», Չայկովսկու «Պիկովայա դամա» և «Չերևիչկի» (ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1942), Մուսորգսկու «Բորիս Գոդունով», Ռոսինիի «Վիլհելմ Տել» (ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1943), Փալիաշվիլու «Աբեսալոմ և Էթերի», Պուչչինիի «Չիո-Չիո-սան» օպերային ներկայացումները։

Մ-Փ-ի արվեստին բնորոշ են հարազատությունը հեղինակի մտահղացմանը, ոճի նուրբ զգացողությունը։ Որպես դիրիժոր-դրամատուրգ, Մ-Փ. զգում էր ինչպես ներդաշնակ ամբողջությունը, այնպես էլ ամեն մի մանրամասնի գեղարվեստական արտահայտչականությունը։ Նրա ներկայացումներում դիրիժորական կատարյալ տեխնիկան, երաժշտական բարձր կուլտուրան զուգորդվել են կատարվող ստեղծագործությունների վառ զգացմունքային մեկնաբանման հետ։

1939-ին նշանակվել է Մոսկվայում կայացած հայկ. արվեստի առաջին տասնօրյակի երաժշտական ղեկավար, 1956-ին՝ երկրորդ տասնօրյակի խորհրդատու։ 1958-ին Մեծ թատրոնի խմբի հետ հյուրախաղերով հանդես է եկել Երևանում (Գլինկայի «Իվան Սուսանին», Բորոդինի «Իշխան Իգոր» օպերաները, Բեթհովենի Իններորդ սիմֆոնիան)։ Ներկայացումներ է վարել նաև արտասահմանյան մի շարք թատրոններում՝ Պրագայում, Օստրավայում, Լոնդոնում, Բուդապեշտում։ Արժանացել է «Գրան պրի» (Ֆրանսիա) մրցանակի՝ Բորոդինի «Իշխան Իգոր» (1953), Պրոկոֆևի «Պատերազմ և խաղաղություն» (1962), Ամերիկյան արվեստների ակադեմիայի մրցանակի (1964)՝ Մուսորգսկու «Բորիս Գոդունով» օպերաների ձայնագրության համար։

Մ-Փ. հայտնի է նաև որպես մի շարք ստեղծագործությունների հեղինակ. «Տասներկուերորդ գիշեր» օպերա (ըստ Շեքսպիրի), սիմֆոնիա, ռոմանսներ Ա. Պուշկինի և Ի. Էրենբուրգի խոսքերով։ Պարգևատրվել է 3 շքանշանով։

*Գրկ.* А. Ш. Мелик-Пашаев, Воспоминания, статьи, материалы, М., 1976.

*Գ. Գյոդակյան*

**ՄԵԼԻՔ-ՓԱՇԱԵՎ** (Մ ե լ ի ք-Փ ա շ ա յ ա ն) Հովհաննես Ներսեսի [1(13).5. 1889, Շուշի —28.10.1935, Լենինգրադ], հայ սովետական ինժեներ-էներգետիկ։ Ավարտել է Պետերբուրգի պոլիտեխնիկական ինստ-ը (1913)։ Մ-ի նախագծերով են կառուցվել ՍՍՀՄ հիդրոէներգետիկայի առաջնեկները՝ Զեմո-Ավճալայի Լենինի անվ., Ռիոնի, Երևանի, Լենինականի, Ստեփանակերտի ՀԷԿ-երը։ Մ-ի անմիջական ղեկավարությամբ է մշակվել նաև Չիրչիկ գետի (Ուզբեկական ՍՍՀ) ՀԷԿ-երի կասկադի նախագիծը։ Մ-ի մշակած «Հայաստանի էլեկտրիֆիկացման օրինակելի պլանը» (1921—22) օգտագործվել է ՀՍՍՀ էներգետիկայի զարգացման հիմքում։ Ընտրվել է ՍՍՀՄ Կենտգործկոմի անդամ։ Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով։

*Գրկ.* Գ ր ի գ ո ր յ ա ն Հ ր., Սովետական Հայաստանի էլեկտրիֆիկացիայի պատմությունից (1921—1928 թթ.), «ԲՀԱ», 1960, № 1։ Чарквиани К., История электроэнергетики Советской Грузии, Тб., 1975.

*Ռ. Մալխասյան*

**ՄԵԼԻՔ-ՓԱՇԱԵՎ** (Մ ե լ ի ք-Փ ա շ ա յ ա ն) Ներսես Հովհաննեսի (ծն. 30.3. 1925, Թիֆլիս), թռչող ապարատների շարժիչների տեսության բնագավառի հայ սովետական գիտնական։ Տեխ. գիտ. դ-ր (1964), պրոֆեսոր (1967)։ Հ. Ն. *Մելիք-Փաշաևի* որդին։ ՍՄԿԿ անդամ 1947-ից։ 1948-ին ավարտել է Ն. Ե. Ժուկովսկու անվ. ռազմաօդային ինժեներական ակադեմիան և դասախոսում է նույն տեղում։ Ռեակտիվ շարժիչների հետազոտման աշխատանքների համար արժանացել է Ն. Ե. Ժուկովսկու անվ. մրցանակի։ «Ռեակտիվ շարժիչներ» (1976, ռուս.) գրքի հեղինակներից է։

**ՄԵԼԻՔ-ՕՀԱՆՋԱՆՅԱՆ** Կարապետ Աղաբեգի (4.3.1893, գ. Կալեր, Մեղրու շրջանում —22.2.1970, Երևան), հայ սովետական բանասեր, հայագետ-արևելագետ, թարգմանիչ։ Պրոֆեսոր (1935), Հայկ. ՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1962), ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1965)։

Նախնական կրթությունն ստացել է Գանձակում, 1913-ից սովորել է Լազարյան ճեմարանում, որի պրոֆեսորական խորհրդի որոշմամբ 1914-ին գործուղվել է Գերմանիա՝ գերմաներենի մեջ հմտանալու և սանսկրիտ սովորելու։ 1915—17-ին եղել է ազատ ունկնդիր Բեռլինի համալսարանում։ 1920-ին վերադարձել է Երևան, աշխատել արական գիմնազիայում, ապա՝ Հայկական կարմիր բանակի քաղլուսվարչությունում՝ կուլտուրկրթական բաժնի վարիչ և «Կարմիր բանակ» թերթի խմբագիր։ Միաժամանակ Հայաստանի ժող. համալսարանում դասավանդել է հայ գրականություն և գերմ.։ 1921-ին զբաղեցրել է Հայաստանի գիտական ինստ-ը (Էջմիածնում), 1922—25-ին դասախոսել Երևանի համալսարանում։ 1930—37-ին եղել է Հայաստանի գիտությունների ինստ-ի, այնուհետև՝ նյութական կուլտուրայի պատմության, կուլտուրայի պատմության, պատմության և գրականության ինստ-ների գիտական քարտուղարը, հայ հին գրականության ու ժող. բանահյուսության բաժինների վարիչ։



Կ. Ա. Մելիք-Օհանջանյան

Մ-Օ. զբաղվել է բանագիտությամբ, հայ հին գրականությամբ և հայ ժող. պատմությամբ, արևելագիտությամբ, համեմատական տեքստաբանությամբ, զրական, գիտական և բանահյուսական հուշարձանների թարգմանությամբ։ Նրա գրչին են պատկանում «Տիրան-Տրդատի վեպը ըստ Փավստոս Բուզանդի» (1947), «Ազգաբանական ավանդույթների բանահյուսական աղբյուրների հարցի շուրջը» («ՊԲՀ», № 4, 1964), «Միհրա-Միհրը «Սասնա ծռերի» մեջ» (1946), «Լենինը հայ ֆոլկլորի մեջ» (տես «Լենինը հայ ֆոլկլորի մեջ» գրքում, 1936) աշխատությունները։ Մ. Աբեղյանի հետ ձեռնարկել և իրականացրել է «Սասնա ծռերի» գիտական հրատարակությունը (հ. 1—2, 1936—51)։ Գրի է առել «Սասնա ծռերի» ութ նոր պատում, ռուս. է թարգմանել «Սասնա ծռերի» 10 ընտիր պատում՝ ընդարձակ ուսումնասիրությամբ և հարուստ ծանոթագրություններով։

Մեծ է Մ-Օ-ի վաստակը հայ հին գրականության հետազոտման և գրապատմական հուշարձանների գիտական հրատարակության բնագավառում [«Էջեր հայ միջնադարյան գեղարվեստական արձակից» (1957), «Կորյունը և նրա «Վարք Մաշտոցի» (ռուս., 1962), «Կիրակոս Գանձակեցի, «Պատմություն Հայոց» (1961), «Պատմութիւն Փարէզի և Վեննայի» (1966)]։ Արևելագիտական-հայագիտական արժեքավոր ուսումնասիրություն է նրա «Ֆիրդուսին և Իրանի վիպական մոտիվները «Շահնամեում» և հայ մատենագրության

մեջ» (տես «Ֆիրդուսի», ժող., 1934)։ Ռուս. է թարգմանել Մ. Աբեղյանի «Հայոց հին գրականության պատմության» (1948) 1-ին հատորը։

Գրկ. Ղ ա ն ա լ ա ն յ ա ն Ա., Կարապետ Աղաբեկի Մելիք-Օհանջանյան, Ե., 1978 (Նյութեր Հայկական ՍՍՀ գիտնականների կենսամատենագիտության, № 23)։

*Ս. Հարությունյան*

**ՄԵԼՆԻԿՈՎ** Օլեգ Ալեքսանդրովիչ (ծն. 1912), սովետական աստղագետ, ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ (1960)։ Ավարտել է Խարկովի համալսարանը (1933)։ 1936-ից աշխատում է ՍՍՀՄ ԳԱ Գլխավոր աստղադիտարանում (Պուլկովո)։ Լենինգրադի համալսարանի պրոֆեսոր (1946-ից)։ Միջազգային աստղագիտական միության «Աստղագիտական գործիքներ» հանձնաժողովի պրեզիդենտ (1977)։ Կազմակերպման առաջին օրերից ղեկավարել է (1960—66) ՍՍՀՄ ԳԱ Հատուկ աստղադիտարանը, մասնակցել աշխարհում խոշորագույն աստղադիտակի (գլխավոր հայելու տրամագիծը՝ 6 *մ*) ստեղծմանը։ Աշխատանքները վերաբերում են անկայուն և փոփոխական աստղերին, Արեգակի ֆիզիկային, միջաստղային միջավայրին, աստղագիտական գործիքաշինությանը և աստղաֆիզիկայի պատմությանը։ 1948-ից գիտական սերտ կապերի մեջ է Բյուրականի աստղադիտարանի հետ. 1949-ին և 1950-ին ղեկավարել է աստղերի ուլտրամանուշակագույն սպեկտրների դիտման՝ Պուլկովոյի և Բյուրականի աստղադիտարանների համատեղ գիտարշավները (Արագած լեռան լանջին, 3200 *մ* բարձրության վրա)։ ՍՍՀՄ ԳԱ Ֆ. Ա. Բրեդիխինի անվ. մրցանակի դափնեկիր է (1965)։

*Լ. Միրզոյան*

**ՄԵԼՈ**... (<հուն. μέλος—երգ, մեղեդի), բարդ բառերի սկզբնամաս, որ նշում է կապը երաժշտության հետ (օրինակ՝ *մելոդեկլամացիա, մելոդրամա*)։

**ՄԵԼՈԴԵԿԼԱՄԱՑԻԱ** ( *մելո*... և լատ. declamatio — արտասանություն), բեմական արվեստի տեսակ, որ առաջացել է Հին Հռոմում I—II դդ. որպես բանաստեղծական և դրամատիկական երկերի պալատական ընթերցման եղանակ՝ տավղի նվագակցությամբ։ Մ. XIX դ. Ռուսաստանում եղել է սալոնային ժանրից, ապա էստրադային ժանր՝ չափածոյի և արձակ հատվածի անգիր ընթերցում՝ դաշնամուրի նվագակցությամբ։

*Հ. Հովհաննիսյան*

**ՄԵԼՈԴԻԿԱ** (< հուն. μελωδικός — մեղեդային, երգային), 1. երաժշտագիտության մի բաժինը՝ ուսմունք մեղեդու մասին։ 2. Երաժշտության որևէ բնագավառին կամ առանձին կոմպոզիտորին հատուկ մեղեդիական արվեստի բնորոշ հատկանիշների համադրվածքը, մեղեդիակազմության բնորոշ եղանակը կամ սկզբունքը։ Ավելի լայն առումով Մ. մեղեդիական երևույթները բնութագրող բոլոր հատկանիշների և օրինաչափությունների համադրվածքն է։

*Ռ. Աթայան*

**ՄԵԼՈԴՐԱՄԱ** (< *մելո*... և *դրամա* բառից), դրամատուրգիական և թատերական ժանր։ Ձևավորվել է XVII—XVIII դդ. Իտալիայում և Ֆրանսիայում։ Նախնական իմաստով Մ. օպերայի մի տեսակն է՝ չափածո խոսքի, երաժշտության ու երգի համադրումով (Ժ. Ժ. Ռուսոյի «Պիգմալիոնը», 1762)։ Մ-ի այդ տիպը զարգացել է XVIII—XIX դդ. Եվրոպայում և Ռուսաստանում՝ աստիճանաբար վերաճելով դրամատիկական ժանրի՝ զգայացունց սյուժեով, ցուցադրական հույզերով, բարու և չարի ճակատային հակադրությամբ, առաքինության հաղթանակով և բարոյա-խրատական լուծումով։ Մ-ի լավագույն նմուշները զուգորդված են եղել սոցիալական անարդարության դեմ բողոքով։ XVIII դ. վերջին և XIX դ. սկզբին մշակվել է Մ-ի ընդհանուր սյուժետային մի տիպ՝ գործող անձանց և փոխհարաբերությունների մոտ մեկ տասնյակ տարբերակով։ Գրվել ու խաղացվել են այդ տիպի հարյուրավոր պիեսներ ժամանակի եվրոպական ու ռուս. բեմերում, ինչպես և XIX դ. հայ թատրոնում։ Մ-ի հին օրինակներից են՝ Ժ. Մ. Մոնվելի «Վանքի զոհերը» (1791), Լամարտելյերի «Ռոբերտ ավազակապետը» (1792)։ Մ-ի հետագա հեղինակներից են՝ Գ. Պիկսերեկուրը, Մ. Լյուիսը, Վ. Դյուկանժը, Օ. Անիսե-Բուրժուան, Ա. դը Էններին և ուրիշներ։ Մ-ներում խաղացել են ժամանակի նշանավոր դերասաններ Է. Քինը, Ֆ. Լեմեթրը, Պ. Մոչալովը, հայ բեմում՝ Մ. Մնակյանը, Թ. Ֆասուլյաճյանը, Պ. Ադամյանը, Հ. Աբելյանը, Սիրանույշը և ուրիշներ։

*Հ. Հովհաննիսյան*

**ՄԵԼՈՍ** (< հուն. μέλος), Հին Հունաստանում (Հոմերոսի ժամանակներից սկսած) նշանակել է մեղեդի, եղանակ, նաև պոետական արվեստում՝ երգելով կատարելու հատկացված քնարական բանաստեղծություն (ի տարբերություն վիպականից և եղերերգականից)։ Երաժշտագիտության մեջ Մ. երաժշտության մեղեդիական (ինտոնացիոն) էության (ի տարբերություն ռիթմականից), նրա մեղեդիական նախասկզբի ընդհանրացված հասկացությունն է։

*Ռ. Աթայան*

**ՄԵԼՎԻԼ** (Melville) Հերման (1819—1891), ամերիկացի գրող։ 1839—44-ին եղել է նավաստի։ «Թայփի» (1846) և «Օմու» (1847) վիպակներում ցույց է տվել բուրժ. քաղաքակրթության կործանարար ազդեցությունը Պոլինեզիայի բնակիչների վրա։ 1849-ին հրապարակել է «Ռեդբըրն» կենսագրական վիպակը և «Մարդի» երգիծական այլաբանությունը։ 1851-ին ստեղծել է «Մոբի Դիք կամ Ճերմակ կետաձուկը» (հայ. հրտ., 1979) սոցիալ-փիլ., կիսաֆանտաստիկական վեպը։ Այնուհետև հրատարակել է «Պիեռ կամ Երկիմաստություններ» (1852) հոգեբանական վեպը, «Իզրայել Փոթըր» (1855) պատմական, «Խարդախը» (1857) երգիծական վիպակները, «Պատշգամբում արված պատմություններ» (1856) նովելների ժողովածուն։ Լույս է ընծայել նաև չափածո գործեր՝ «Բանաստեղծություններ պատերազմի մասին» (1866), «Քլարելը» (1876), «Ջոն Մարր» (1888), «Թիմոլեոնը» (1891)։ «Բիլլի Բադ» (1881, հրտ. 1924) վեպի սյուժեով գրվել է օպերա։ Ժամանակակիցներից չգնահատված և մոռացված Մ. XX դ. 20-ական թթ. ճանաչվել է ԱՄՆ-ի գրականության դասական։

**ՄԵԼՔԻՈՐ**, մ ե լ խ ի ո ր [գերմ. Melchior, ֆրանս. maillechort-ի աղավաղված ձևը, ֆրանսիացի գյուտարարներ Մայյոյի (Maillot) և Շորիեի (Chorier) անունով], պղնձի համաձուլվածքը հիմնականում նիկելի (5—30%) հետ։ Մ. արծաթապիտակավուն է, ունի մեծ կոռոզիակայունություն, սառը և տաք վիճակներում լավ մշակվում է ճնշմամբ։ Կիրառվում է ամանեղեն, մետաղադրամներ, ճշգրիտ մեխանիկայի դետալներ, բժշկական գործիքներ են պատրաստելու համար։

**ՄԵԼՔԻՍԵԴԵԿ** (ծն. և մահ. թթ. անհտ.), հայ գրիչ և մանրանկարիչ։ XIV դ. 1-ին կեսի *Վասպուրականի մանրանկարչության դպրոցի* ներկայացուցիչ։ Հայտնի է մեկ ձեռագրով (Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարան, ձեռ. № 4813), որն ընդօրինակվել է 1338-ին։ Ավետարանի «Ծնունդ», «Տյառնընդառաջ», «Հարություն» և «Չորս ավետարանիչ»-ի ինքնատիպ հորինվածքներն ունեն հստակ



Մ ե լ ք ի ս ե դ ե կ. «Չորս ավետարանիչ», մանրանկար 1338-ին պատկերազարդված Ավետարանից (Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարան, ձեռ. № 4813)

կառուցվածք, կերպավորված են համարձակ, արտահայտիչ գծանկարով և մաքուր գույների (հիմնականում կապույտ, կանաչ, կարմիր) հնչեղ հարաբերումներով։ Նման գունամտածողությունը եզակի է հայ միջնադարյան արվեստում և նորովի ի հայտ է եկել ինչպես XX դ. հայկ., այնպես էլ արևմտաեվրոպական գեղանկարչությունում։ Մ-ի ընդգծված անհատականությամբ բնորոշվող ձևաստեղծման և գեղանկարչական սկզբունքները նրա նկարներին հաղորդում են հուզական խորը լիցք։

Գրկ. Հ ա կ ո բ յ ա ն Հ., Հայկական մանրանկարչություն. Վասպուրական, [ալբոմ], Ե., 1978։

*Հ. Հակոբյան*

**ՄԵԼՔՈՆՅԱՆ** Անդրեյ Խաչիկի [ծն. 1915, գ. Մելկանով (այժմ՝ Կրասնոդարի երկրամասում)], Սովետական Միության հերոս (13.9.1944), գվարդիայի ավագ։ ՍՄԿԿ անդամ 1942-ից։ 1937-ին զորակոչվել է կարմիր բանակ։ 1939—40-ին մասնակցել է Արևմտյան Բելոռուսիայի, Արևմտյան Ուկրաինայի ազատագրմանը, սովետաֆիննական պատերազմին։ Հայրենական մեծ պատերազմի ժամանակ, որպես սակրավորային ջոկի հրամանատար, 1942-ից մարտնչել է Կովկասի, Ստալինգրադի պաշտպանության, Ուկրաինայի ազատագրման համար։ Հերոսի կոչման արժանացել է 1944-ի ապրիլին՝ Դնեստրի գետանցման ժամանակ ցուցաբերած արիության համար։ Պարգևատրվել է Լենինի, Կարմիր

ատողի, Փառքի 2-րդ և 3-րդ աստիճանների շքանշաններով։

**ՄԵԼՔՈՆՅԱՆ** Աշոտ Անատոլիի (ծն. 1.3. 1930, Դոնի Ռոստով), հայ սովետական նկարիչ։ ՀՍՍՀ վաստ. նկարիչ (1977)։ 1950-ին ավարտել է Երևանի Փ. Թերլեմեզյանի անվ. գեղարվեստական ուսումնարանը, 1956-ին՝ գեղարվեստա-թատերական ինստ-ը։ 1972-ից դասավանդում է Երևանի Խ. Աբովյանի անվ. մանկավարժական ինստ-ում։ Մ-ի աշխատանքներին բնորոշ է հորինվածքի կառուցիկությունը, դասական հավասարակշռությունը, գունային մեղմ գամման, ծավալաձևերի



Ա. Մ ե լ ք ո ն յ ա ն. «Ընտանիք» (1967, Հայաստանի պետական պատկերասրահ, Երևան)

պլաստիկ ավարտվածությունը և շարժումների մեղեդիականությունը, տարածական միջավայրի զուսպ հուզա-արտահայտչական հագեցվածությունը, լուսավոր քնարականությունը։ Ստեղծագործություններից են՝ «Գարնանային ջրեր» (1958, Երևանի Ա. Մյասնիկյանի անվ. հանրապետական գրադարան), «Սպիտակ ձի» (1963, Հայաստանի պետ. պատկերասրահ), «Ժաննա» (1965), «Ընտանիք» (1967, Հայաստանի պետ. պատկերասրահ), «Արգիշտի թագավորը» (1968, ՍՍՀՄ նկարիչների միության գեղ. ֆոնդ), «Գրքով տղան» (1970), «Նոր շրջան» (1971, Տրետյակովյան պատկերասրահ, Մոսկվա), «Արմեն» (1972, Արևելքի ժողովուրդների արվեստի թանգարան, Մոսկվա)։ 1957-ից մասնակցում է հանրապետական և միութենական, 1976-ից՝ միջազգային (Իտալիա, Ֆրանսիա, ԱՄՆ, Պորտուգալիա ևն) ցուցահանդեսների։

**ՄԵԼՔՈՆՅԱՆ** Արտյոմ Սերգոյի (ծն. 17.5. 1931, Լենինական), հայ սովետական այգեգործ։ Գյուղատնտ. գիտ. դ-ր (1972), պրոֆեսոր (1973)։ ՍՄԿԿ անդամ 1958-ից։ Ավարտել է Հայկ. գյուղատնտ. ինստ-ը (1954)։ Եղել է ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրի (1972) և ՀԿԿ Կենտկոմի գյուղատնտեսության բաժնի վարիչի տեղակալ (1972—74), 1974—80-ը՝ Խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության հայկ. ԳՀԻ-ի դիրեկտոր։ 1981-ից ՀՍՍՀ պտուղ-բանջարեղենի տնտեսության մինիստրի առաջին տեղակալն է։ Գիտական աշխատանքները վերաբերում են խաղողի վազի կենսբ. պրոցեսների կարգավորման, բերքատվության բարձրացման, այգեգործության ինտենսիվացման, ինչպես նաև ՀՍՍՀ-ի կիսաանապատային քարքարոտ հողերում խաղողի այգիների մշակության առավել արդյունավետ եղանակների ներդրման և այլ հարցերին։ Իտալիայի խաղողագործության և գինեգործության ակադեմիայի թղթակից անդամ (1977)։ Պարգևատրվել է Ժողովուրդների բարեկամության, «Պատվո նշան» շքանշաններով։

*Երկ.* Խաղողագործություն, Ե., 1975։ Խաղողի այգիների մշակությունը կիսաանապատային քարքարոտ հողերում, Ե., 1974 (համահեղինակից՝ Յու. Զ. Բաբսեղյան)։ Виноградарство Италии, М., 1971; Регуляция жизнедеятельности кустов винограда, Е., 1973.

**ՄԵԼՔՈՆՅԱՆ** Գասպար Հովակիմի (27.1. 1881, Ախալցխա — 14.3.1952, Երևան), հայ սովետական վիրաբույժ։ Բժշկ. գիտ. դ-ր (1973), պրոֆեսոր (1935)։ Հայաստանում վիրաբուժության հիմնադիրներից է։ 1908-ին ավարտել է Օդեսայի Նովոռոսիյսկյան համալսարանը։ 1910—19-ին աշխատել է Թիֆլիսի Միխայլովյան հիվանդանոցում, եղել Կովկասյան բժշկ. ընկերության անդամ։ 1920-ից՝ Երևանի քաղաքային հիվանդանոցի վիրաբուժական բաժանմունքի վարիչ, մասնակցել է Երևանի համալսարանի բժշկ. ֆակուլտետի կազմակերպմանը, ուր դասավանդել է 1930—31-ին։ 1934-ին հիմնել է Հայաստանի բժշկ. ընկերության վիրաբուժական բաժանմունքը և ղեկավարել մինչև 1938-ը, 1935-ից՝ բժշկ. ինստ-ի հոսպիտալային վիրաբուժության ամբիոնի վարիչ։ 1941—45-ին եղել է Երևանի էվակոհոսպիտալների վիրաբույժ և խորհրդատու։ Մ-ի գիտական աշխատանքները հիմնականում վերաբերում են ոսկրապատվաստման, ծայրամասային նյարդերի, կրծքավանդակի և դրա օրգանների վնասվածքների ու բարդությունների բուժման հարցերին։ Առաջարկել է ուղիղ աղիքի, շարժուն երիկամի ամրացման (ֆիքսման) եղանակ, նկարագրել օրգանիզմից դուրս ոսկրի գոյացման ու աճման բացառիկ դեպք։ Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով։ Մ-ի անունով են կոչվում Երևանի II կլինիկական հիվանդանոցի վիրաբուժական բաժանմունքը, բժշկ. ինստ-ի հոսպիտալային վիրաբուժության կլինիկան։

**ՄԵԼՔՈՆՅԱՆ** Զարեհ (ծն. 1924, Հալեպ), հայ գրող։ Նախնական կրթությունն ստացել է Հալեպի Հայկազյան վարժարանում։ Այնուհետև սովորել է ամերիկյան, ֆրանսիական ուսումնարաններում, ավարտել Կիպրոսի Մելքոնյան կրթական հաստատությունը, Բեյրութի ամերիկյան համալսարանը։ Հրատարակվել են «Ես և մարդիկ» (1943), «Քրիեղեղեն հետո» (1947), «Երջանկություն» (1950) բանաստեղծությունների ժողովածուները։ Գրել է նաև «Սիրո ցանցին մեջ» (1962), «Անգո հետքեր» (1963) պիեսները։ Կազմել և հրատարակել է «Գործնական քերականություն» (1958) և «Գրական գիտելիքներ» (1960) դասագրքերը, 1956-ին հիմնել և մինչև 1964-ը խմբագրել է «Շիրակ» ամսագիրը։ Աշխատակցել է «Ահաձան», «Անի», «Զարթոնք», «Սևան», «Նայիրի» և այլ ամսագրերի ու թերթերի։ 1968-ից ապրում է ԱՄՆ-ում։

*Երկ.* Ափերը մինչև անկարելիին, Բեյրութ, 1967։ Լեռներ վիհերու մեջ, Լոս Անջելես, 1978։

*Գ. Սևան*

**ՄԵԼՔՈՆՅԱՆ** Լիպարիտ Գևորգի [14.11. 1909, գ. Ղարաքիլիսա (այժմ՝ Կիրովական)—16.1.1976, Երևան], հայ սովետական քիմիկոս։ Քիմ. գիտ. դ-ր (1969), պրոֆեսոր (1970)։ Ավարտել է Երևանի համալսարանը (1938)։ 1958—70-ին եղել է Երևանի պոլիմերների համամիութենական ԳՀԻ-ի պոլիմերների և լատեքսների ֆիզիկաքիմիական հետազոտությունների լաբորատորիայի վարիչ, 1972-ից՝ Երևանի համալսարանի ֆիզիկական քիմիայի ամբիոնի վարիչ։ Գիտական աշխատանքները վերաբերում են էմուլսիոն համակարգերում պոլիմերման և համապոլիմերման պրոցեսների ուսումնասիրությանը։ Պարզաբանել է էմուլսիոն համակարգերում *մակրոմոլեկուլների* կազմավորման օրինաչափությունները, էմուլգատորի շերտի դերն ու անցանկալի երկրորդական պրոցեսները կանխելու հնարավորությունը։ Առաջարկել է բարձրորակ կաուչուկների և լատեքսների ստացման հեշտ իրականացվող արտադրական եղանակ։ Պարգևատրվել է Կարմիր դրոշի շքանշանով։

*Ա. Շահինյան*

**ՄԵԼՔՈՆՅԱՆ** Հայկ Հովհաննեսի [1911, գ. Բլուրմակ (Վանի վիլայեթ)—1979, Երևան], կուսակցական և պետական աշխատող։ ՍՄԿԿ անդամ 1932-ից։ Ավարտել է ՍՄԿԿ Կենտկոմին կից կուսակցական բարձրագույն դպրոցը (1954)։ 1940—41-ին եղել է ՀԿԿ Երևանի Կիրովյան շրջկոմի առաջին քարտուղար։ Հայրենական մեծ պատերազմի ժամանակ կռվել է Լենինգրադյան ռազմաճակատում։ 1948—51-ին եղել է Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար, 1954—57-ին՝ ՀԿԿ Կենտկոմի բաժնի վարիչ։ 1957—61-ին Մ. ՀՍՍՀ ներքին գործերի մինիստրն էր, 1961—74-ին՝ ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի գործերի կառավարիչը։ 1974—79-ին գլխավորել է Հայկ. ՍՍՀ Մինիստրների խորհրդի ձկնտնտեսության միավորումը։ Պարգևատրվել է Կարմիր դրոշի, Հայրենական պատերազմի I և II աստիճանների շքանշաններով։

*Մ. Սահակյան*

**ՄԵԼՔՈՆՅԱՆ** Հովհաննես Ռուբենի [ծն. 27.2.1937, գ. Անիպեմզա (Արթիկի շրջանում)], հայ սովետական գրող, դրամատուրգ։ ՍՄԿԿ անդամ 1966-ից։ Ավարտել է Երևանի համալսարանի բանասիրական ֆակուլտետը (1960)։ Հեղինակ է «Քարավան» (1971), «Հեռավոր հողի ձայնը» (1973), «Հարցաքննություն» (1977), «Մոր ձայնը» (1980) վիպակների ու պատմվածքների ժողովածուների։ Բեմադրվել են նրա «Հայր Տոնապետի մենախոսությունը» (համահեղինակից՝ Գ. Չալիկյան, 1973), «Հրաժարական» (1978) պիեսները։ Մ-ի սցենարով նկարահանվել է «Խոնարհվիր վաղվա օրվան» գեղարվեստական կինոնկարը (1979)։ Նրա ստեղծագործությունները թարգմանվել են ՍՍՀՄ և այլ ժողովուրդների լեզուներով։ Մ-ի ստեղծագործական թեմատիկայի ընդգրկումը լայն է, բազմաբնույթ, ակունքը ժող. ավանդույթներն են, նյութը՝ ետպատերազմյան և ժամանակակից կյանքը։

**ՄԵԼՔՈՆՅԱՆ** Միեր Սիմոնի (ծն. 18.9.1920, գ. Մեծ Պարնի, ՀՍՍՀ Սպիտակի շրջանում), հայ սովետական անասնաբույժ, կուսակցական ու պետական աշխատող: Տնտ. գիտ. դ-ր (1977): ՍՄԿԿ անդամ 1945-ից: Ավարտել է Երևանի անասնաբուծական-անասնաբուժական ինստ-ը (1942): Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին (1942—45): Եղել է Սպիտակի շրջսովետի Գործկոմի նախագահ (1958—1959), ՀԿԿ Սիսիանի շրջկոմի առաջին քարտուղար (1959—61): 1961—72-ին՝ ՀԿԿ Կենտկոմի քարտուղար: 1972-ից՝ ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության գիտության և կադրերի պատրաստման գլխավոր վարչության պետ և մինիստրի տեղակալ: Մ-ի գիտ. աշխատանքները վերաբերում են ոչխարաբուծության տնտ. արդյունավետության բարձրացման, ինտենսիվացման, տեղաբաշխման, մասնագիտացման, արդ. հիմքերի վրա փոխադրելու խնդիրներին:

Եղել է ՀԿԿ Կենտկոմի անդամ (1960—1972), բյուրոյի անդամ (1961—72): ՀՍՍՀ V—VII գումարումների Գերագույն սովետի դեպուտատ:

Պարգևատրվել է Լենինի, Աշխատանքային կարմիր դրոշի և Կարմիր աստղի շքանշաններով:

*Երկ.* Ոչխարաբուծության զարգացման էտապները և ինտենսիվացման ուղիները, Ե., 1974: Пути повышения экономической эффективности овцеводства, Е., 1981.

**ՄԵԼՔՈՆՅԱՆ** Պետրոս Գրիգորի [20.12. 1905, Ղարաքիլիսա (այժմ՝ Կիրովական)— 4.9.1965, Երևան], կուսակցական և պետական աշխատող, մանկավարժ: ՀՍՍՀ վաստ. ինժեներ (1965): ՍՄԿԿ անդամ 1938-ից: Ավարտել է Կիրովականի աշխատանքային դպրոցը (1927), Երևանի պոլիտեխնիկական ինստ-ը (1936), աշխատել է ՍՍՀՄ ծանր արդյունաբերության ժողկոմատի ուս. հաստատությունների վարչության ուսմասվար՝ Հայաստանի գծով, ինժեներատեխնիկական և տնտ. աշխատողների որակավորման ինստ-ի դիրեկտոր (1937), ՀԿԿ Երքաղկոմի քարտուղար (1941): Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին (1941—45), եղել է ավիացիոն դիվիզիայի քաղբաժնի պետի տեղակալ, 1946—65-ին՝ Երևանի պոլիտեխնիկական ինստ-ի ռեկտոր: ՀԿԿ Կենտկոմի անդամ (1964—65), ՀՍՍՀ VI գումարման Գերագույն սովետի դեպուտատ: Մ-ի անունով է կոչվում Կիրովականի շինարարական տեխնիկումը: Պարգևատրվել է Կարմիր աստղի, Հայրենական պատերազմի II աստիճանի և «Պատվո նշան» շքանշաններով:

**ՄԵԼՔՈՒՄՅԱՆ** Աշոտ Գալուստի (ծն. 1922, գ. Գառնաքար, ԼՂԻՄ Մարտակերտի շրջանում), Փառքի երեք աստիճանների շքանշանների ասպետ (22.2.1944, 17.6. 1944, 3.5.1945): ՍՄԿԿ անդամ 1943-ից: Ավարտել է Երևանի գյուղատնտեսական ինստ-ի ագրոնոմիական ֆակուլտետը (1968): Հայրենական մեծ պատերազմին մասնակցել է 1942-ի աշնանից, 89-րդ Հայկական (Թամանյան) հրաձգային դիվիզիայի կազմում: Փառքի շքանշաններին արժանացել է Կերչի, Սևաստոպոլի և Լեհաստանի ազատագրման մարտերում ցուցաբերած արիության համար:

*Մ. Սահակյան*

**ՄԵԼՔՈՒՄՅԱՆ** Գեորգի Արշակի [ծն. 20.3. 1932, գ. Հադրութ (Լեռնային Ղարաբաղի ԻՄ Հադրութի շրջանում)], սովետական պետական աշխատող: ՍՄԿԿ անդամ 1964-ից: Ավարտել է Ադրբեջանի պոլիտեխնիկական ինստ-ի շինարարական ֆակուլտետը (1954): Աշխատել է Ադրբ. ՍՍՀ Կարյագինոյի (այժմ՝ Ֆիզուլիի) շրջանի ճանապարհների շահագործման տեղամասում, «Ադրբճաննախագիծ» ինստ-ում, 1961-ից՝ ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի խճուղային ճանապարհների գլխավոր վարչությունում: 1970-ից՝ ՀՍՍՀ ավտոմոբիլային ճանապարհների շինարարության և շահագործման մինիստրի տեղակալ, 1977-ից՝ մինիստր: ՀՍՍՀ X գումարման Գերագույն սովետի դեպուտատ է:

**ՄԵԼՔՈՒՄՅԱՆ** Թամար Բաղդասարի [13(26).12.1914, Բաքու — 4.10.1981, Ստեփանակերտ], հայ սովետական դերասանուհի: Ադրբեջանական ՍՍՀ ժող. արտիստուհի (1961): ՍՄԿԿ անդամ 1941-ից: 1931-ին ընդունվել է Բաքվի հայկ. թատրոնին կից դրամատիկական ստուդիան և սովորելուն զուգընթաց աշխատել նույն թատրոնում: 1936-ից՝ Ստեփանակերտի Մ. Գորկու անվ. թատրոնի դերասանուհի: Լավագույն անձնավորումներից են՝ Էփեմիա, Սալոմե (Սունդուկյանի «Պեպո», «Քանդած օջախ»), Մարգարիտ (Շիրվանզադեի «Պատվի համար»), Նատաշա (Գորկու «Հատակում»), Սևիլ (Ջ. Ջաբարլիի «Սևիլ»), Խուրաման (Վուրղունի «Վագիֆ»):

**ՄԵԼՔՈՒՄՅԱՆ** Սերգեյ Ավանեսի (ծն. 10.11.1931, գ. Ճարտար, ԼՂԻՄ Մարտունու շրջանում), հայ սովետական աշխարհագրագետ: Աշխարհագրական գիտ. դ-ր (1973), պրոֆեսոր (1977): ՍՄԿԿ անդամ 1967-ից: 1956-ին ավարտել է Երևանի համալսարանը: 1975-ից դասախոսում է Երևանի ժողտնտեսության ինստ-ում: Գիտ. աշխատությունները վերաբերում են ՍՍՀՄ և ՀՍՍՀ արդյունաբերության տեղաբաշխման ու զարգացման և տնտ. կապերի խնդիրներին:

*Երկ.* ՍՍՀՄ արդյունաբերության ճյուղերի զարգացումն ու տեղաբաշխումը, Ե., 1975: Հայկական ՍՍՀ տնտեսական կապերը, Ե., 1979:

**ՄԵԼՔՈՒՄՅԱՆ** (Մ ե լ ք ու մ ո վ) Տիգրան Մելիքսեթի (15.3.1902, Մեղրի —4.9.1974, Մոսկվա), ինժեներա-տեխնիկական ծառայության գեներալ-մայոր (1949): Տեխ. գիտ. դ-ր (1940): ՌՍՖՍՀ գիտության և տեխնիկայի վաստ. գործիչ (1957): ՍՄԿԿ անդամ 1943-ից: Ավարտել է Բաքվի պոլիտեխնիկական ինստ-ը (1929): 1919-ին կամավոր մտել է կարմիր բանակ, Թուրքմենիայում կռվել սպիտակգվարդիականների դեմ: 1932-ից դասավանդել է Ն. Ե. Ժուկովսկու անվ. ռազմաօդային ակադեմիայում: Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին (1941—45): Մինչև զորացրվելը (1969) աշխատել է ավիացիոն արդյունաբերության տարբեր գիտ. հիմնարկներում: Մոտորաշինության բնագավառում կատարել է գիտ. ներդրումներ: Ունի գիտ. ուսումնասիրություններ: ՍՍՀՄ պետ. մրցանակ (1949):

*Լ. Ստեփանյան*

**ՄԵԼՔՈՒՄՈՎ** (Մելքումյան) Հակոբ Արշակի [12(24).12.1885, գ. Խերխան (այժմ՝ ԼՂԻՄ Շուշիի շրջանում)—3.7.1962, Մոսկվա], սովետական ռազմական գործիչ, հեծյալ բրիգադի հրամանատար (1919): ՍՄԿԿ անդամ 1918-ից: Ավարտել է Մ. Վ. Ֆրունզեի անվ. ռազմ. ակադեմիան (1934): 1907-ին զորակոչվել է ցարական բանակ, մասնակցել առաջին համաշխարհային պատերազմին: 1917-ի նոյեմբերից մարտնչել է Դոնում հակահեղափոխական խռովություն բարձրացրած գեներալ Կալեդինի դեմ: 1918-ի ամռանը նշանակվել է մոսկովյան 1-ին հեծյալ գնդի հրամանատար, Վորոնեժի մատույցներում մարտեր մղել Դենիկինի զորքերի դեմ: 1919-ի վերջին նշանակվել է Թուրքեստանյան ռազմաճակատի 1-ին հեծյալ բրիգադի հրամանատար, մասնակցել է Բուխարայի ազատագրման մարտերին: 1920—31-ին կռվել է Միջին Ասիայում՝ Էնվեր-Փաշայի «Իսլամի բանակի» ևն բանդաների (տես *Բասմաչություն*) դեմ: 1934—37-ին եղել է միջինասիական ռազմ. օկրուգի հրամանատարի տեղակալ: Հրատարակել է «Թուրքեստանցիներ» (Մոսկվա, 1960) ռազմ. հուշերի գիրքը: Պարգևատրվել է Կարմիր դրոշի 3 և այլ շքանշաններով:

*Ա. Վարդապետյան*

**ՄԵԽԱԴԻՐ** (Նախադուռ), գյուղ Աբխազական ԻՍՍՀ Գագրայի շրջանում, շրջկենտրոնից 23 *կմ* հյուսիս-արևմուտք: Բնակիչները՝ հայեր, մոլդավացիներ: Կոլտնտեսությունն զբաղվում է ծխախոտի և եգիպտացորենի մշակությամբ, այգեգործությամբ, անասնապահությամբ, մեղվաբուծությամբ: Ունի հայկ. ութամյա և տարրական դպրոցներ, 2 ակումբ-կինո, գրադարան, բուժկայան: Մ. հիմնադրել են մոլդավացիները, 1883-ին: Հայերը եկել են Սամսունի և Օրդուի շրջակա գյուղերից, 1898-ին:

**ՄԵԽԱԿ** (Dianthus), մեխակազգիների ընտանիքի միամյա կամ բազմամյա խոտերի, հազվադեպ՝ կիսաթփերի ցեղ: Ցողունը հանգուցավոր է, տերևները՝ հակադիր, նստադիր, գծային կամ նշտարաձև գծային: Ծաղիկները հերթադիր են, կարմիր,

Մ ե խ ա կ. *1.* դելտայաձև, *2.* փետրավոր, *3.* մորուքավոր

վարդագույն, ծիրանագույն, սպիտակ կամ դեղնականաչ, բուրավետ, մեկական կամ դիխազիում ծաղկաբույլերով: Պսակաթերթերը վերևում ծոպավոր են: Բաժակը ձուլաթերթ է: Պտուղը բազմասերմ տուփիկ է: Հանդիպում է Եվրոպայում, Ասիայում, Աֆրիկայում: Հայտնի է շուրջ 300 տեսակ, ՍՍՀՄ-ում՝ 100, ՀՍՍՀ-ում՝ 18: Մ-ի շատ տեսակներ (պարտեզային կամ հոլանդական Մ., մորուքավոր կամ տաճկական Մ., փետրաձև Մ. ևն) մշակվում են վաղուց ի վեր. հայտնի են բազմաթիվ արժեքավոր պարտեզային ձևեր և սորտեր: Մ. է կոչվում նաև մեխակածառի չորացած ծաղկակոկոններից ստացվող համեմունքը:

**ՄԵԽԱՆԱՔԻՄԻԱ** պոլիմերների, գիտության ճյուղ. ուսումնասիրում է մեխանիկական ուժերի ազդեցությամբ *պոլիմերներում* ընթացող քիմ. փոխարկումները: Մեխանիկական ուժերի (օրինակ՝ մամլման, մանրացման, գլանման ևն) ազդեցության տակ պոլիմերներում քիմ. կապերը խզվում են (մ ե խ ա ն ա դ ե ս տ ր ու կ ց ի ա), առաջանում են քիմ. պրոցեսներն ակտիվացնող ազատ ռադիկալներ, նկատելիորեն փոխվում են պոլիմերների ֆիզիկական և քիմ. հատկությունները (նվազում է մոլեկուլային զանգվածը, առաջանում են նոր ֆունկցիոնալ խմբեր, փոխվում է լուծելիությունը, մեծանում ռեակցիոնունակությունը ևն): Մեխանիկական ներգործություններն օգտագործվում են պոլիմերների հատկությունները ցանկալի փոփոխությունների ենթարկելու, նոր պոլիմերներ սինթեզելու և այլ նպատակով:

Մեխանաքիմիական երևույթները միաժամանակ նպաստում են պոլիմերների հոգնածության և քայքայման պրոցեսներին: Այդ պատճառով մեծ նշանակություն ունի պոլիմերների կայունացումը, հատկապես երկարատև պարբերական ծանրաբեռնվածությունների դեպքում:

**ՄԵԽԱՆԻԶՄ** (< հուն. μηχανή — գործիք, հարմարանք), կիրառված ուժերի ազդեցությամբ որոշակի նպատակային շարժումներ կատարող մարմինների (օղակների) համախումբ: Ըստ կառուցվածքա-կոնստրուկտիվ հատկանիշների Մ-ները լինում են՝ հոդակապավոր (լծակավոր), բռնցքավոր, ատամնավոր, սեպային, պտուտակավոր, ֆրիկցիոն, ճկուն օղակներով, հիդրավլիկական էլեկտրական սարքերով ևն: Այն Մ-ները, որոնցում բոլոր կետերի հետագծերը գտնվում են նույն կամ զուգահեռ հարթություններում, կոչվում են հարթ Մ-ներ (շուռտվիկա-սողնակային, բռնցքավոր, սեպային ևն): Մ-ները կարող են ունենալ ազատության մեկ կամ մի քանի աստիճաններ: Առավել տարածված են ազատության մեկ աստիճանով Մ-ները, որտեղ բոլոր օղակների շարժման որոշակիության համար պետք է տրվի մեկ օղակի շարժման օրենքը: Սակավ կիրառում են նաև ազատության երկու աստիճանով Մ-ներ (դիֆերենցիալ): Շարժիչային, փոխանցման և գործադիր Մ-ների համախումբը կազմում է *մեքենա*: Որոշ մեքենաներ բաղկացած են մեկ Մ-ից (օրինակ, *շարժիչները*) կամ Մ-ի և այլ սարքերի համակցումից: Մ-ի հետազոտման ու նախագծման մեթոդները կազմում են *մեքենաների և մեխանիզմների տեսության* մասը:

**ՄԵԽԱՆԻԶՄՆԵՐԻ ԿԻՆԵՄԱՏԻԿԱ**, *մեքենաների և մեխանիզմների տեսության* բաժին. ուսումնասիրում է մեխանիզմի մասերի (օղակների) շարժման երկրաչափական կողմը՝ անտեսելով շարժումն առաջացնող պատճառները: Մ. կ-ում դիտարկվում են կինեմատիկական վերլուծության և կինեմատիկական սինթեզի խնդիրները (տես *Մեխանիզմների սինթեզ*): Մ. կ-ի հիմնական խնդիրներն են. մեխանիզմի օղակների դիրքի և դրա առանձին կետերի հետագծերի, մեխանիզմի կետերի գծային և դրանց օղակների անկյունային արագությունների և արագացումների որոշումը: Նշված խնդիրների լուծման համար ելակետային տվյալները մեխանիզմի տանող օղակների շարժման օրենքներն են: Մ. կ-ի խնդիրները լուծվում են գրաֆիկական, վերլուծական և գրաֆիկա-վերլուծական եղանակներով (տես *Գրաֆիկական հաշվարկ*), իսկ տիպային մեխանիզմների կինեմատիկայի խնդիրները՝ էլեկտրոնային հաշվողական մեքենաների համար մշակված ծրագրերի օգնությամբ: Հատուկ ուսումնասիրության առարկա է, այսպես կոչված, չփակվող կինեմատիկական շղթայով Մ. կ., որը կապված է կիբեռնետիկական սարքերի (ռոբոտների, մանիպուլյատորների) ստեղծման հետ:

*Յու. Սարգսյան*

**ՄԵԽԱՆԻԶՄՆԵՐԻ ԿԻՆԵՏՈՍՏԱՏԻԿԱ**, *մեքենաների և մեխանիզմների տեսության* բաժին, որում, այսպես կոչված, ուժային հաշվարկի եղանակով որոշվում են մեխանիզմի կինեմատիկական զույգերի տարրերի հակազդումները (շարժման օրենքը հայտնի է): Եթե մեխանիզմի օղակներին կիրառված բոլոր արտաքին ուժերին գումարվեն իներցիայի ուժերը, ապա, *Դ'Ալամբերի սկզբունքի* համաձայն, պայմանականորեն կարելի է ընդունել, որ ամբողջ մեխանիզմը և դրա առանձին մասերը գտնվում են հավասարակշռության վիճակում: Հետևաբար, մեխանիզմի վրա ազդող ուժերը որոշելիս, օգտվում են *ստատիկայի* հավասարումներից: Հավասարումների համակարգը կազմվում են մեխանիզմի մասերի՝ օղակների և կինեմատիկական զույգերի համար: Անհայտ հակազդումների թիվը հավասար է հավասարումների թվին: Մեխանիկայում նման համակարգերը կոչվում են ս տ ա տ ի կ ո ր ե ն ո ր ո շ ե լ ի: Կինեմատիկական զույգերում շփման ուժերը հաշվի առնելու դեպքում հավասարումների համակարգին ավելանում է ևս մի անկախ հավասարում: Մ. կ-ի եղանակներից օգտվում են նոր մեքենաների նախագծման ժամանակ՝ ամրության հաշվարկներ կատարելիս:

*Յու. Սարգսյան*

**ՄԵԽԱՆԻԶՄՆԵՐԻ ՍԻՆԹԵԶ**, *մեքենաների և մեխանիզմների տեսության* բաժին. ուսումնասիրում է տրված կինեմատիկական և դինամիկական հատկություններով մեխանիզմների կինեմատիկական սխեմաների նախագծման եղանակները: Առավել լրիվ են մշակված տրված կինեմատիկական հատկություններով Մ. ս-ի եղանակները: Պարզագույնը *բռնցքավոր մեխանիզմների* կինեմատիկական սինթեզն է. հայտնի համարելով մեխանիզմի տիպը՝ որոշում են օղակների այն չափերը, որոնց դեպքում ապահովվում է առանձին օղակների տրված շարժման օրենքը: Ավելի բարդ է *լծակային մեխանիզմների* սինթեզը, որը կարող է կատարվել միայն մոտավոր կերպով: Հոդակապավոր մեխանիզմների սինթեզի եղանակները հիմնված են ֆունկցիաների մոտարկումների տեսության կիրառման վրա: Այս եղանակներն առաջարկել է Պ. Լ. *Չեբիշևը*, 1853-ին: Մ. ս-ի եղանակների ընդհանուր թերությունն այն է, որ դրանք հնարավորություն չեն տալիս ընտրելու մեխանիզմի սխեման, իսկ օղակների չափերը հաճախ ստացվում են կոնստրուկտիվորեն ոչ պիտանի: Նշված թերությունները զգալի չափով կարող են վերացվել էլեկտրոնային հաշվողական մեքենաների կիրառմամբ:

**ՄԵԽԱՆԻԿԱ** [<հուն. μηχανική (τέχνη)— մեքենաների մասին գիտություն, մեքենաների կառուցման արվեստ], նյութական մարմինների մեխանիկական շարժումը և շարժման ժամանակ մարմինների փոխազդեցությունն ուսումնասիրող գիտություն: Մեխանիկական շարժում ասելով հասկանում են ժամանակի ընթացքում տարածության մեջ մարմինների կամ դրանց մասերի փոխադարձ դիրքի փոփոխությունը: Դասական Մ., որի հիմքում ընկած են *Նյուտոնի օրենքները*, ուսումնասիրում է նյութական մարմինների (տարրական մասնիկներից բացի) շարժումները, որոնք տեղի են ունենում լույսի արագությունից փոքր արագություններով: Լույսի արագության կարգի արագություններով մարմնի շարժումն ուսումնասիրում է *հարաբերականության տեսությունը* (տես *Հարաբերականության հատուկ տեսություն*), իսկ ներատոմային երևույթները և տարրական մասնիկների շարժումը՝ *քվանտային մեխանիկան*: Մ-ում նյութական մարմինների շարժումն ուսումնասիրելիս օգտվում են հետևյալ վերացական հասկացություններից. ն յ ու թ ա կ ա ն կ ե տ (զանգված ունեցող անվերջ փոքր չափերի օբյեկտ), բ ա ց ա ր ձ ա կ պ ի ն դ մ ա ր մ ի ն (մարմին, որի կամայական երկու կետերի հեռավորությունը մնում է անփոփոխ), դ ե ֆ ո ր մ ա ց վ ո ղ հ ո ծ մ ի ջ ա վ ա յ ր (կիրառվում է այն դեպքում, երբ կարելի է անտեսել դեֆորմացվող միջավայրի մոլեկուլային կառուցվածքը): Ըստ այդմ տարբերում են նյութական կետի Մ., նյութական կետերի համակարգի Մ., բացարձակ պինդ մարմնի Մ. և *մեխանիկա հոծ միջավայրի*: Վերջինս, իր հերթին, բաժանվում է հեղուկի և գազի Մ-ի (*հիդրոդինամիկա, աերոդինամիկա, գազային դինամիկա*) և դեֆորմացվող պինդ մարմնի Մ-ի (*առաձգականության տեսություն, պլաստիկության տեսություն, ռեոլոգիա*): Ըստ դիտարկվող խնդիրների բնույթի այս բաժիններում առանձնացնում են *ստատիկան, կինեմատիկան* և *դինամիկան*:

Մ-ի խնդիրների լուծման համար օգտվում են զանազան մաթ. մեթոդներից, որոնցից շատերի առաջացումը և զարգացումը սերտորեն կապված են Մ-ի հետ: Մեխանիկական շարժման հիմնական օրենքների և սկզբունքների, ինչպես նաև դրանցից բխող թեորեմների և հավասարումների ուսումնասիրությունը կազմում է ը ն դ հ ա ն ու ր կամ տ ե ս ա կ ա ն Մ-ի առարկան: Մ-ի՝ ինքնուրույն նշանակություն ունեցող կարևոր բաժիններից են նաև *տատանումների* տեսությունը, հավասարակշռության և *շարժման կայունության* տեսությունը, *փոփոխական զանգվածով մարմինների մեխանիկան*, *հարվածի* տեսությունը: Մ. սերտորեն կապված է ֆիզիկայի մի շարք բաժինների, *աստղագիտության* և, հատկապես, *երկնային մեխանիկայի* հետ: Մ-ի՝ տեխնիկային հարող բաժիններն են *հիդրավլիկան*, *նյութերի դիմադրությունը*, մեխանիզմների կինեմատիկան, արտաքին *բալիստիկան*, հրթիռների դինամիկան ևն:

Մ-ում շարժման հիմնական կինեմատիկական բնութագրիչներն են. կետի համար՝ արագությունն ու արագացումը, պինդ մարմնի համար՝ համընթաց շարժման արագությունն ու արագացումը և մարմնի *պտտական շարժման* անկյունային արագությունն ու արագացումը: Դեֆորմացվող պինդ մարմնի կինեմատիկական վիճակը բնութագրվում է մարմնի մասնիկների հարաբերական երկարացումներով և սահքով:

Մ-ում նյութական մարմինների մեխանիկական փոխազդեցության հիմնական չափը *ուժն* է: Օգտվում են նաև ուժի մոմենտ հասկացությունից (կետի կամ առանցքի նկատմամբ): Հոծ միջավայրում առաջացող ներքին լարումները բնութագրվում են միջավայրի յուրաքանչյուր կետում նորմալ և շոշափող լարումներով: Ազդող ուժերից բացի մարմնի շարժումը կախված է նաև նրա իներտության աստիճանից: Նյութական կետի իներտության չափը կոչվում է կետի զանգված:

Նյութական մարմնի իներտությունը կախված է ոչ միայն իր ընդհանուր զանգվածից, այլև մարմնում զանգվածների բաշխումից, որը բնութագրվում է զանգվածների կենտրոնի դիրքով և *իներցիայի մոմենտներով*: Հեղուկի կամ գազի իներտությունը բնութագրվում է խտությամբ:

Հոծ միջավայրի Մ-ում Նյուտոնի օրենքներից բացի օգտվում են նաև տվյալ միջավայրի հատկություններն արտահայտող օրենքներից (*Հուկի օրենքը* առաձգական մարմնի համար և Նյուտոնի օրենքը մածուցիկ հեղուկի համար):

Մ-ի խնդիրների լուծման համար կարևոր նշանակություն ունեն նաև շարժման դինամիկական չափերի (շարժման քանակ, շարժման քանակի մոմենտ, կինետիկ էներգիա) և ուժի ազդման չափերի (ուժի իմպուլս, աշխատանք) հասկացությունները: Շարժման չափերի և ուժի ազդման չափերի առնչություններից ստացվում են դինամիկայի ընդհանուր թեորեմները: Այդ թեորեմները և դրանցից բխող պահպանման օրենքներն արտահայտում են նյութական կետերի ցանկացած համակարգի և հոծ միջավայրի շարժման հատկությունները: Նյութական կետերի ոչ ազատ համակարգի հավասարակշռության կամ շարժման օրինաչափությունները ուսումնասիրելիս օգտվում են *մեխանիկայի վարիացիոն սկզբունքներից*:

Մ-ի զարգացման պատմությունը կարելի է բաժանել հետևյալ ժամանակաշրջանների. 1. Մ-ի հիմնական օրենքների հայտնագործմանը նախորդող ժամանակաշրջան, 2. Մ-ի հիմունքների ստեղծման ժամանակաշրջան (XVII դ.), 3. Մ-ի կարևորագույն բաժինների՝ պինդ մարմնի Մ-ի, հիդրոմեխանիկայի, առաձգականության տեսության ստեղծման ժամանակաշրջան (XVIII դ.), 4. իրական միջավայրերի և համակարգերի Մ-ի զարգացման ժամանակաշրջան (XIX և XX դդ.):

Մ-ի բաժիններից ստատիկայի վաղ զարգացումը պայմանավորված էր, հիմնականում, շինարարական տեխնիկայի պահանջներով: Մ. թ. ա. IV դ. սկզբում արդեն հայտնի էին նույն կետում կիրառված և նույն ուղղով ազդող ուժերի գումարման և հավասարակշռման պարզագույն օրենքները: Հատուկ հետաքրքրություն էր առաջացրել լծակի խնդիրը, որի տեսությունը մշակել է *Արքիմեդը*: Ստատիկայի հետագա զարգացման գործում մեծ ավանդ են ներդրել *Լեոնարդո դա Վինչին* և Պ. Վարինյոնը: XVII դ. հանդիսացավ Մ-ի հիմունքների ստեղծման դարաշրջան: Բնագիտության զարգացման գործում կարևոր նշանակություն է ունեցել մոլորակների շարժման մասին Ն. *Կոպեռնիկոսի* ուսմունքը, որի հիման վրա Յո. *Կեպլերը* սահմանել է մոլորակների շարժման օրենքները: Մ-ի գիտական հիմունքները մշակել է Գ. *Գալիլեյը*: Նա ձևակերպել է Մ-ի երկու հիմնական դրույթները՝ հարաբերականության սկզբունքը և իներցիայի օրենքը, փորձով ստացել մարմինների ազատ անկման օրենքը, սկիզբ դրել տատանումների տեսությանը և մշակել նյութերի դիմադրության մասին գիտության հիմունքները: Մ-ի բնագավառում Գալիլեյի հետևորդն էր Ք. *Հյուգենսը*, որն ուսումնասիրել և լուծել է դինամիկայի մի շարք կարևորագույն խնդիրներ, գիտություն մուծել կենտրոնաձիգ և կենտրոնախույս ուժերի, իներցիայի մոմենտի հասկացությունները:

Մ-ի հիմնական օրենքները վերջնականորեն ձևակերպել է Ի. *Նյուտոնը*: Ամփոփելով իր նախորդների ուսումնասիրությունները՝ նա ընդհանրացրել է ուժի հասկացությունը և տվել զանգվածի գաղափարը: Ուսումնասիրելով հեղուկներում մարմինների շարժման օրինաչափությունները՝ ձևակերպել է հեղուկներում և գազերում ներքին շփման հիմնական օրենքը: XVII դ. 2-րդ կեսին Ռ. *Հուկը* փորձնական եղանակով բացահայտել է առաձգական մարմնի դեֆորմացիայի և լարման կապը: XVIII դ. կարևորագույն մեխանիզմների ուսումնասիրության անհրաժեշտությունը, ինչպես նաև երկնային Մ-ի զարգացումը պայմանավորեցին Մ-ի խնդիրների լուծման ընդհանուր անալիտիկ մեթոդների ստեղծումը և զարգացումը (Ժ. *Լագրանժ*, Լ. *Էյլեր*):

Ոչ ազատ համակարգի դինամիկայի ստեղծման պատմությունը կապված է համակարգի հավասարակշռության ընդհանուր պայմաններն արտահայտող *հնարավոր տեղափոխությունների սկզբունքի* զարգացման հետ: Այդ սկզբունքը մշակել են Յո. *Բեռնուլին* և ուրիշներ, իսկ ավելի ընդհանուր տեսքով ձևակերպել է *Դ' Ալամբերը*: Մ-ի սկզբունքների հետագա զարգացմանը նպաստել են Մ. *Օստրոգրադսկու*, Կ. *Յակոբիի* և այլոց աշխատանքները:

XIX դ. դինամիկայի կարևորագույն խնդիրներից էին. ծանր պինդ մարմնի շարժումը, շարժման և հավասարակշռության կայունության ընդհանուր տեսությունը (Լագրանժ, Ն. *Ժուկովսկի*, Ա. *Լյապունով*), նյութական համակարգի տատանումների խնդիրը: Էյլերի, Լագրանժի, Ս. *Կովալևսկայայի* մշակած՝ արագ պտտվող սիմետրիկ պինդ մարմնի (*գիրոսկոպ*) շարժման տեսությունը մեծ կարևորություն ստացավ XX դ.:

XIX դ. հոծ միջավայրի Մ. զգալի զարգացում ապրեց: Լ. *Նավիեն* և Օ. *Կոշին* իրենց աշխատանքներում արտածեցին առաձգականության տեսության ընդհանուր հավասարումները: Այդ բնագավառում լուրջ նվաճումների են հասել Ջ. *Գրինը*, Ս. *Պուասոնը*, Ա. *Սեն-Վենանը*, Օստրոգրադսկին, Գ. *Լամեն*, Ու. *Թոմսոնը*, Գ. *Կիրխհոֆը* և ուրիշներ: Նավիեի և Ջ. *Ստոքսի* ուսումնասիրությունները հանգեցրին մածուցիկ հեղուկի շարժման դիֆերենցիալ հավասարումների ստեղծմանը: Իդեալական և մածուցիկ հեղուկի դինամիկայի հետագա զարգացման գործում մեծ դեր են խաղացել Հ. *Հելմհոլցը*, Կիրխհոֆը, Ժուկովսկին, Օ. *Ռեյնոլդսը*, Լ. *Պրանդտլը* և ուրիշներ:

XX դ. էլեկտրատեխնիկայի, ռադիոտեխնիկայի, ավտոմատ կառավարման տեխնիկայի, տեխնիկական ձայնագիտության պահանջները պայմանավորեցին գիտության նոր բնագավառի՝ ոչ գծային տատանումների տեսության ստեղծումը: Այդ գիտության հիմունքները մշակել են Լյապունովը և Ա. *Պուանկարեն*:

Արդի Մ-ի հիմնական խնդիրներն են. տատանումների տեսությունը, պինդ մարմնի դինամիկան, շարժման կայունության տեսությունը, փոփոխական զանգվածով մարմինների Մ. և տիեզերական թռիչքների դինամիկան: Հոծ միջավայրի Մ-ում առավել արդիական են հեղուկների տուրբուլենտ հոսանքների խիստ տեսության մշակումը, պլաստիկության և սողքի խնդիրների լուծումը, պինդ մարմինների ամրության և քայքայման տեսության մշակումը: Մ-ի հարցերի մի մեծ խումբ կապված է մագնիսական դաշտում պլազմայի շարժման (*մագնիսական հիդրոդինամիկա*) ուսումնասիրության, այսինքն, արդի ֆիզիկայի հրատապ խնդիրներից մեկի՝ կառավարվող ջերմամիջուկային ռեակցիաների իրականացման հետ:

ՀՍՍՀ-ում Մ-ի բնագավառի հետազոտությունները տարվում են հետևյալ ուղղություններով. առաձգականության և պլաստիկության տեսություն, թաղանթ-

ների և սալերի տեսություն, սողքի տեսություն, հիդրոդինամիկա, մագնիսաառաձգականության տեսություն: Հիմնականում աշխատանքները կատարվում են ՀՍՍՀ ԳԱ մեխանիկայի ինստ-ում, Երևանի համալսարանում և պոլիտեխնիկական ինստ-ում: Մ-ի տարբեր բնագավառներում կատարվող հետազոտությունների արդյունքները հրապարակվում են «ՀՍՍՀ ԳԱ Զեկույցներում», «ՀՍՍՀ ԳԱ Տեղեկագրում» (Մեխանիկա սերիա), «Գիտական տեղեկագրերում» (Երևանի պետական համալսարան, Բնական գիտություններ սերիա) և այլ պարբերական հանդեսներում:

Գրկ. Բուխգոլց Ն. Ն., Տեսական մեխանիկայի հիմնական դասընթաց, մաս 1—2, Ե., 1949: Ньютон И., Математические начала натуральной философии, в кн.: Крылов А. Н., Собр. трудов, т. 7, М.—Л., 1936; Прандтль Л., Гидроаэромеханика, 2 изд., М., 1951; Жуковский Н. Е., Теоретическая механика, 2 изд., М.—Л., 1952; Ильюшин А. А., Пластичность, М., 1963; Механика в СССР за 50 лет, т. 1—4, М., 1968—1973; Боголюбов А. Н., Механика в истории человечества, М., 1978; Григорьян А. Т., Механика от античности до наших дней, 2 изд., перераб. и доп., М., 1974; Նույնի, Механика и астрономия на средневековом Востоке, М., 1980. *Վ. Գնունի, Գ. Բարսեղյան*

**ՄԵԽԱՆԻԿԱ ՀՈԾ ՄԻՋԱՎԱՅՐԻ**, մեխանիկայի բաժին, որն ընդգրկում է հիդրոաերոմեխանիկա, *գազային դինամիկա*, *առաձգականության տեսություն* և *պլաստիկության տեսություն* ենթաբաժինները, ինչպես նաև մի շարք այլ տեսություններ: Մ. հ. մ. դիտարկում է նյութը որպես անընդհատ միջավայր՝ անտեսելով նյութի ընդհատ կառուցվածքը (մոլեկուլային, ատոմային): Հոծ միջավայրի մեխանիկայում ուսումնասիրվում են նյութի մակրոծավալները և այնպիսի երևույթներ, որոնց համար էական են միայն միջավայրի վիճակը բնութագրող պարամետրերի (շարժման արագություններ, լարումներ, ջերմաստիճան) միջինացված արժեքները: Հոծ միջավայրի մեխանիկայի բոլոր ենթաբաժիններն օգտվում են շարժման (կամ հավասարակշռության), միջավայրի անխզելիության, էներգիայի պահպանման հավասարումներից, ինչպես նաև միջավայրի մասնակի ֆիզիկական հատկությունները բնութագրող որոշիչ հավասարումներից: Բացի թվարկած հավասարումների համակարգից, կոնկրետ խնդիրները բնութագրվում են միջավայրի վիճակի սկզբնական և եզրային պայմաններով: Մ. հ. մ. լայն կիրառություն ունի ֆիզիկայի և տեխնիկայի տարբեր բնագավառներում:

Գրկ. Седов Л. И., Механика сплошной среды, т. 1—2, М., 1973. *Լ. Դետրոյան*

**ՄԵԽԱՆԻԿԱ ՍՈՐՈՒՆ ՄԻՋԱՎԱՅՐԻ**, հոծ միջավայրի մեխանիկայի (տես *Մեխանիկա հոծ միջավայրի*) բաժին, որն ուսումնասիրում է սորուն միջավայրերի (ավազային, կավային և այլ գրունտների, հատիկների ևն) հավասարակշռությունն ու շարժումը: Սորուն միջավայրի մեխանիկայի հիմնական խնդիրն է՝ որոշել գրունտների ճնշումը հենապատերին, զանգվածների սահքի մակերևույթների հնարավոր ձևերը, հատիկների ճնշումն էլևատորի պատերին, հաշվել հիմքերի անհրաժեշտ խորությունը, ուսումնասիրել դինամիկական բեռնվածքի դեպքում ալիքային պրոցեսները գրունտներում ևն: Սորուն միջավայրի մեխանիկայի հիմնական բաժիններից է *գրունտների մեխանիկան*:

**ՄԵԽԱՆԻԿԱԿԱՆ ՁԱՅՆԱԳՐՈՒՄ**, ձայնային հաճախականության էլեկտրական ազդանշանների գրառման համակարգ, որը հիմնված է մեխանիկական ազդեցությամբ ազդանշանակրի (սկավառակի) ձևի փոփոխության վրա: Սովորաբար Մ. ձ. կատարվում է սկավառակի եզրից դեպի կենտրոնը, ուստի ձայնաշավիղն ունենում է պարույրի ձև: Մոնոֆոնիկ *ձայնագրման* տեսակներն են. լայնական ձայնագրում, երբ գրի առնող տարրի (կտրիչի) մեխանիկական տատանումները տեղի են ունենում սկավառակի շառավղի ուղղությամբ, խորքային ձայնագրում, երբ կտրիչը տատանվում է սկավառակի մակերևույթին ուղղահայաց, և միկրոձայնագրում (փոքր ամպլիտուդի տատանումներով լայնական ձայնագրում): Ստերեոֆոնիկ ձայնագրման դեպքում կտրիչը տատանվում է սկավառակի մակերևույթի նկատմամբ 45° անկյուն կազմող 2 փոխուղղահայաց ուղղություններով (լայնական-խորքային ձայնագրում):

**ՄԵԽԱՆԻԿԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՄ**, տեխնոլոգիական պրոցեսներ, որոնց նպատակը մեքենաների, ապարատների, սարքերի դետալների վրա տրված ձևի, չափերի և որակի մակերևույթներ ստանալն է (տաշեղահանման եղանակով): Մ. մ. կատարվում է *մետաղահատ գործիքներով մետաղահատ հաստոցների վրա*:

**ՄԵԽԱՆԻԿԱԿԱՆ ՆՄԱՆՈՒԹՅՈՒՆ**, տես *Նմանության տեսություն*:

**ՄԵԽԱՆԻԿԱՅԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ ՀՍՍՀ ԳԱ**, գիտահետազոտական հիմնարկություն Երևանում: Կազմակերպվել է 1971-ին, ՀՍՍՀ ԳԱ մաթեմատիկայի և մեխանիկայի ինստ-ի (1944—55-ին՝ ՀՍՍՀ ԳԱ մաթեմատիկայի և մեխանիկայի սեկտոր) հիման վրա: Ինստ-ում կատարվում են հիմնարար հետազոտություններ առաձգականության մաթեմատիկական տեսության, նյութերի սողքի, անիզոտրոպ թաղանթների և սալերի տեսությունների զարգացման ուղղությամբ: Տարվում են նաև գործնական նշանակություն ունեցող տեսական աշխատանքներ առաձգականության մաթ. տեսության, հիդրոդինամիկայի որոշ հարցերի, բարակ մարմինների մագնիսաառաձգականության, պլաստիկության և ոչ գծային առաձգականության տեսության բնագավառում: Ուսումնասիրվում են շերտավոր սալերի և թաղանթների ամրությանը, կայունությանը, տատանումներին և օպտիմալ նախագծմանը, առաձգականության տեսության խառը և կոնտակտային խնդիրներին վերաբերող հարցեր: Փորձարարական հետազոտություններ են կատարվում բետոնի, մետաղների, կոմպոզիցիոն պլաստիկ նյութերի և բնահողերի սողքի և այլ հատկությունների ուսումնասիրության բնագավառում: Ինստ-ն ունի առաձգականության և պլաստիկության տեսության, թաղանթների և սալերի տեսության բաժիններ, նյութերի սողքի և ամրության լաբորատորիա, հոծ միջավայրի մեխանիկայի և դեֆորմացվող հոծ մարմինների էլեկտրադինամիկայի բաժիններ, էլեկտրաչափիչ սարքերի լաբորատորիա, մեխանիկական արհեստանոց: *Բ. Աբրահամյան*

**ՄԵԽԱՆԻԿԱՅԻ ՎԱՐԻԱՑԻՈՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐ**, ընդհանուր դրույթներ, որոնք հնարավորություն են տալիս ուսումնասիրել արտաքին ուժերի ազդեցությամբ մեխանիկական համակարգի շարժման կամ հավասարակշռության օրինաչափությունները, տարբերել մեխանիկական համակարգի իրական՝ փաստացի շարժումը կինեմատիկորեն հնարավոր բոլոր շարժումներից: Մ. վ. ս. արտահայտվում են համակարգի կետերի կոորդինատների, արագությունների և արագացումների վարիացիաներ պարունակող հավասարություններով: Յուրաքանչյուր սկզբունք սահմանում է մեխանիկական համակարգի իրական շարժումը բնութագրող որոշակի ֆիզիկական հատկություն: Սովորաբար այդ հատկություններին բնորոշ է այն, որ իրական շարժման համար համակարգի կինեմատիկական և դինամիկական բնութագրիչների ֆունկցիա հանդիսացող որոշ ֆիզիկական մեծություն ունի էքստրեմալ (նվազագույն կամ առավելագույն) արժեք: Մեխանիկայի ոչ վարիացիոն սկզբունքները սահմանում են համակարգի շարժման օրինաչափությունները՝ համակարգին կիրառված ուժերի ազդեցությամբ: Այդ սկզբունքներից են, օրինակ, Նյուտոնի երկրորդ օրենքը, *Դ'Ալամբերի սկզբունքը*: Մեխանիկայի ոչ վարիացիոն սկզբունքները կիրառելի են ցանկացած մեխանիկական համակարգի նկատմամբ և ունեն համեմատաբար պարզ մաթ. արտահայտություն: Սակայն, դրանց կիրառությունը սահմանափակվում է մեխանիկայի շրջանակներով: Ոչ վարիացիոն սկզբունքների նկատմամբ Մ. վ. ս-ի առավելությունն այն է, որ վերջիններից ստացվում են կապերի անհայտ հակազդումներ չպարունակող մեխանիկական համակարգի շարժման հավասարումներ: Մ. վ. ս-ի գործածումը հանգում է *վարիացիոն հաշվի* մեթոդների կիրառմանը:

Ըստ տեսքի Մ. վ. ս. լինում են դիֆերենցիալ (նկարագրում է իրական շարժման տարբերությունը ժամանակի տվյալ պահին կինեմատիկորեն հնարավոր բոլոր շարժումներից) և ինտեգրալ (նկարագրում է այդ տարբերությունը վերջավոր ժամանակահատվածում կատարվող տեղափոխությունների համար): Մեխանիկայի շրջանակներում դիֆերենցիալ վարիացիոն սկզբունքներն ավելի ընդհանուր են գործնականորեն կիրառելի ցանկացած մեխանիկական համակարգի համար: Առավել գործածական տեսքով ինտեգրալ վարիացիոն սկզբունքները կիրառելի են միայն *պահպանողական համակարգերի* համար: Ի տարբերություն մեխանիկայի դիֆերենցիալ վարիացիոն սկզբունքների և ոչ վարիացիոն սկզբունքների, ինտեգրալ վարիացիոն սկզբունքներում ուժերի փոխարեն հանդես է գալիս էներգիան: Դրա շնորհիվ ինտեգրալ վարիացիոն սկզբունքները տարածվում են նաև ոչ մեխանիկական երևույթների վրա՝ դառնալով կարևոր ամբողջ տեսա-

կան ֆիզիկայի համար: Հիմնական դիֆերենցիալ վարիացիոն սկզբունքներից են *հնարավոր տեղափոխությունների սկզբունքը*, *Դ'Ալամբեր-Լագրանժի սկզբունքը*, *Գաուսի սկզբունքը*, *Հերցի սկզբունքը:* Ինտեգրալ վարիացիոն սկզբունքներից են *փոքրագույն գործողության սկզբունքները:*

Մ. վ. ս. կիրառվում են մեխանիկական համակարգի շարժման պարզ տեսքի հավասարումներ կազմելու և այդ շարժումների ընդհանուր հատկությունները ուսումնասիրելու համար: Հասկացությունների համապատասխան ընդհանրացումներ անելիս Մ. վ. ս. կիրառվում են նաև հոծ միջավայրերի մեխանիկայում, թերմոդինամիկայում, էլեկտրադինամիկայում, քվանտային մեխանիկայում և հարաբերականության տեսության մեջ:

Գրկ. Вариационные принципы механики, [Сб. ст.], под. ред. Л. П. Полака, М., 1959; Бухгольц Н. Н., Основной курс теоретической механики, 5 изд., ч. 2, М., 1969; Голдстейн Г., Классическая механика, пер. с англ., М., 1957. *Մ. Ջաղոյան*

**ՄԵԽԱՆԻՍՏԱԿԱՆ ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄ**, տես *Մեխանիցիզմ:*

**ՄԵԽԱՆԻՑԻԶՄ**, աշխարհըմբռնում և մտածողության եղանակ, ըստ որի բնության բազմազան երևույթների հիմքում ընկած են մեխանիկական շարժման օրենքները, ուստի և դրանք հանգեցնելի են այդ օրենքներին, բացատրելի են դրանցով: Մ. բնորոշ է եղել նոր ժամանակի բնագիտությանը և փիլիսոփայությանը, որոնց դասական ներկայացուցիչները (Ռ. Դեկարտ, Գ. Գալիլեյ, Ի. Նյուտոն, Պ. Լապլաս, Ֆ. Բեկոն, Թ. Հոբս, ֆրանս. մատերիալիստներ) հնարավոր էին համարում բնության բոլոր երևույթներն արտածել մեխանիկայի օրենքներից և ներկայացնել մաթ. հավասարումների տեսքով: Այս մտածելակերպին համապատասխանում է մեխանիկական պատկերացումը մատերիայի ներքին կառուցվածքի մասին, երբ բոլոր մարմինները դիտվում են որպես հեռավորության վրա անմիջականորեն փոխազդող նյութական կետերի հավաքականություն (ագրեգատ): Համապատասխանաբար, աշխարհի ընդհանրական պատկերը ներկայանում է որպես ներփակ մեխանիկական համակարգ, որի վիճակների նկարագրության համար միանգամայն բավարար է մեխանիկական պատճառականության սկզբունքը (այսպես կոչված, լապլասյան դետերմինիզմ): Սակայն մեխանիկայի սկզբունքների տարածումը որակական նոր բնագավառների վրա՝ ջերմային, էլեկտրամագնիսական, քիմ. երևույթների մեխանիկական տեսությունների կառուցումը, պահանջում էր մուծել փորձնական հաստատում չգտնող մտակառույց էություններ (եթեր, ֆլյուիդներ ևն), իսկ դա հակասում էր փորձնական բնագիտության աշխարհայացքային և մեթոդաբանական ելակետային սկզբունքներին: Ուստի, XIX դ. վերջին դասական մեխանիկայի քննադատության հետ միասին Մ. իջավ ասպարեզից: Ներկայումս «Մ.» անվանում են ամեն մի մոտեցում, ըստ որի առհասարակ մատերիայի շարժման բարձր ձևերը հանգեցնելի են ավելի ցածր ձևերին (հասարակական երևույթները՝ կենսաբանական-հոգեբանական օրինաչափություններին, գիտակցությունն ու մտածողությունը՝ նյարդային գործունեության ֆիզիոլոգիային, կենսբ. երևույթները՝ ֆիզիկական և քիմ. օրինաչափություններին ևն): Ժամանակակից Մ-ին առանձնապես սնում են մարդու վարքի, գործունեության, մտածողության կիբեռնետիկական մոդելավորման հաջողությունները: Աշխարհի որակական բազմազանության իր մեկնաբանությամբ՝ վերլուծման և հանգեցման (ռեդուկցիայի) մտածելակերպով, Մ. *մետաֆիզիկայի*, որպես հակադիալեկտիկայի, առաջացման և գոյության նախապայմաններից է:

Գրկ. Էնգելս Ֆ., Անտի-Դյուրինգ, Ե., 1967: Նույնի, Բնության դիալեկտիկա, Ե., 1969 (ըստ առարկայացանկի): Больцман Л., Статьи и речи, пер. с нем., М., 1970, с. 136—162; Вислобоков А. Д., Марксистская диалектика и современный механицизм, М., 1962. *Հ. Գևորգյան*

**ՄԵԽԱՆՈԼԱՄԱՐԿԻԶՄ**, տես *Նեոլամարկիզմ:*

**ՄԵԽԱՆՈՏՐՈՆ** (< հուն. μηχανικός — մեխանիկական և... *տրոն*), *էլեկտրավակուումային սարք*, որում էլեկտրոնային կամ իոնային հոսանքի ուժի կառավարումը կատարվում է էլեկտրոդների անմիջական մեխանիկական տեղաշարժով: Նախատեսված է մեխանիկական մեծությունները էլեկտրականի փոխակերպելու համար և լայնորեն կիրառվում է իբրև տվիչ (փոխակերպիչ)՝ փոքր տեղափոխությունների (0,01-ից մինչև 100 *մկմ*) ու ճիգերի (1 *մկն*-ից մինչև 1 *ն*, նկ. *ա*), ճնշումների (0,1 *ն/մ²*-ուց մինչև 1 *Մն/մ²*, նկ. *բ*), արագացումների (0,001-ից մինչև 100 *մ/վրկ²*), մինչև 10 *կհց* հաճախականության թրթռումների (նկ. *գ*) չափման դեպքում:




Մեխանոտրոնի հիմնական տեսակները. *ա*. տեղափոխությունների և ճիգերի չափման համար, *բ*. ճնշումների չափման համար, *գ*. արագացումների և թրթռումների չափման համար: *Ա*—շարժական անոդ, *Կ*—անշարժ կաթոդ, *Բ*—բալոն, *Մ*—ճկուն մեմբրան, *Ձ*—կառավարող ձող, *Ջ*—հարթ զսպանակ, *ԻՁ*—իներցիոն զանգված: Սլաքներով ցույց է տրված մեխանիկական ազդանշանների՝ տեղափոխության (α), ճիգի (γ), ճնշման (p), արագացման (W) ազդեցության ուղղությունը:

Մ-ի բնորոշ առանձնահատկությունը մեկ կամ մի քանի շարժական էլեկտրոդներն են, որոնց տեղաշարժով (անշարժ կաթոդի նկատմամբ) փոփոխվում է էլեկտրոդների միջև եղած էլեկտրական դաշտը, հետևաբար և անոդային հոսանքի ուժը: Էլեկտրոդների թիվը կարող է լինել 2 (դիոդ), 3 (տրիոդ) կամ 4 (տետրոդ): Տարածված է դիոդային Մ. (անշարժ կաթոդ և 2 շարժական անոդ), որը միացվում է կամրջակային չափիչ սխեմային: Մեխանոտրոնային փոխակերպիչների հիմնական առավելություններն են բարձր զգայնությունն ու կայունությունը, ցուցմունքների հուսալիությունը, կառուցվածքի ու միացման սխեմաների պարզությունը, ոչ մեծ չափերն ու զանգվածը:

**ՄԵԽԻԿԱԼԻ** (Mexicali), քաղաք Մեքսիկայի հյուսիս-արևմուտքում, ԱՄՆ-ի սահմանագլխին: Ստորին Կալիֆոռնիա նահանգի վարչական կենտրոնը: 346 հզ. բն. (1976): Տրանսպորտային հանգույց է, ոռոգվող հողագործության կենտրոն (մշակում են բամբակենի, ցորեն ևն): Կան բամբակազտիչ, մետաղամշակման, սննդի արդյունաբերության ձեռնարկություններ:

**ՄԵԽԻԿՈ** (Méjico, Mexico), Մեքսիկայի մայրաքաղաքը, երկրի տնտեսական, քաղաքական և մշակութային կարևոր կենտրոնը: Գտնվում է Մեքսիկական բարձրավանդակի հվ. մասում, միջլեռնային իջվածքում, 2240 *մ* բարձրության վրա: Կլիման մերձարևադարձային է, հունվարին՝ 11,6°C, հուլիսին՝ 16°C միջին ջերմաստիճաններով և տեղումներով: Հաճախակի են երկրաշարժերը: Բնակչությունը՝ մոտ 14 մլն. (արվարձաններով, 1980): Արվարձանների հետ կազմում է ֆեդերալ օկրուգ, որը կառավարում է Մեքսիկայի պրեզիդենտի կողմից նշանակվող նահանգապետը:

**Պատմական տեղեկանք**: Մ. հիմնադրվել է ացտեկների Տենոչտիտլան քաղաքի (հիմնվել է 1325-ին) տեղում՝ 1521-ին, իսպանացիների կողմից այն զավթելուց ու ավերելուց հետո և դարձել է Նոր Իսպանիա գաղութի մայրաքաղաքը: 1624-ին և 1692-ին Մ-ում ժող. ապստամբություններ են բռնկել իսպանական գաղութային լծի դեմ: 1821-ից անկախ Մեքսիկայի մայրաքաղաքն է: 1846—48-ի ամերիկա-մեքսիկական պատերազմի ժամանակ Մ. զավթել են ԱՄՆ-ի (1847—48), 1861—67-ի մեքս. արշավանքի ժամանակ՝ ֆրանս. (1863—67) զորքերը: 1910—17-ի Մեքսիկական հեղափոխության ժամանակ Մ. գրավել են (1914) գյուղացիական պարտիզանական ջոկատները: XX դ. քաղաքը դարձել է երկրի տնտ. և քաղ. կարևոր կենտրոնը: Երկրորդ համաշխարհային պատերազմից (1939—45) հետո, արդ. նոր ձյուղերի առաջացման հետևանքով, Մ. արագորեն աճում է:

**Տնտեսությունը**: Մ. երկաթուղային և ավտոխճուղային հանգույց է, միջազգային օդային հաղորդակցության կենտրոն: Արդ. արտադրանքի արժեքում ֆեդերալ օկրուգի բաժինը կազմում է շուրջ 2/5 մասը: Կան ավտոհավաքման, էլեկտրատեխնիկական, տեքստիլ, քիմ., սննդի, մետալուրգիական, նավթի և գազի վերամշակման (ստացվում են խողովակաշարերով՝ Մեքսիկական ծոցի ափից) ձեռնարկություններ: Լատինական Ամերիկայի առևտրական և բանկային խոշորագույն կենտրոններից է:




**Ճարտարապետությունը:** Ացտեկների մայրաքաղաքի տեղում հիմնադրված, փողոցների ուղղանկյուն ցանցով հին քաղաքի Պլասա դե լա Կոնստիտուսիոն կամ Սոկալո հրապարակում են գտնվում կաթոլիկե տաճարը (1563—1667, ճարտ-ներ՝ Կ. դե Արսինյեգա, Ա. Պերես դե Կաստանյեդա և ուրիշներ), բարոկկո ոճի Սագրարիո Մետրոպոլիտանո եկեղեցին (1749—1768, ճարտ.՝ Լ. Ռոդրիգես) և Ազգային պալատը (1692—99, ճարտ.՝ Դ. դե Վալվերդե), Խեսուս Նասարենո հոսպիտալը (1524—35, ճարտ.՝ Պ. Վասկես), XVII դ. բազմաթիվ վանքեր: Գուստավո Մադերո շրջանում են Նուևստրա Սենյորա դե Գուադալուպե բազիլիկը (1695—1709, ճարտ.՝ Պ. դե Արյետա): Տլալպան շրջանում պահպանվել է 2 բուրգ (մեկը՝ մ. թ. ա. մոտ 450): 1737-ից Մ. վերահատակագծվել է, կառուցվել են բազմաթիվ եկեղեցիներ, ճիզվիտական կոլեգիումներ, մենատներ: XIXդ.—XX դ. սկզբին բացվել են շքեղ փողոցներ, պողոտաներ, կառուցվել է գործարար կենտրոնը, կառուցապատվել բուրժուաների, արդ. և բանվորական շրջանները: Կլասիցիզմի ոճի շենքերին փոխարինել են էկլեկտիկ կառույցները (Գեղեցիկ արվեստների պալատը, 1904—34, ճարտ.՝ Ա. Բոարի): XX դ. 1-ին կեսին կատարվել են Մ-ի վերակառուցման աշխատանքներ (Ինսուրխենտես պողոտան, 1924, 1932-ից մշակվել է գլխավոր հատակագիծը, մի շարք բնակելի շրջանների կառուցապատում, 1948-ից): Քաղաքի կենտրոնական գործարար մասում կառուցվել են երկնաքերներ (հյուրանոցներ, բանկեր, առևտրական կենտրոններ), հվ-ում՝ համալսարան, մարզադաշտ, նոր շրջաններ, հս-ում՝ արդ. նոր գոտիներ: 1920—40-ական թթ. շինություններից ուշագրավ են ճարտ-ներ՝ Կ. Օբրեգոն Սանտասիլյայի (Առողջապահության մինիստրությունը, 1926—29), Խ. Վիլյագրան Գարսիայի (Հիգիենայի ինստ., 1925—26, Սրտաբանության ազգային ինստ., 1939—43), Է. Յանիեսի (էլեկտրիկների արհմիության շենքը, 1938—1940), Մ. Պանիի (Ազգային կոնսերվատորիան, 1945) կառույցները: XX դ. խոշորագույն կառույցը համալսարանական ավանն է (1949—54, 200 *հա*, մոտ 40 շենք, շինարարության ղեկավար ճարտ.՝ Կ. Լասո, գլխավոր հատակագիծը՝ ճարտ. Մ. Պանի): 1950—60-ական թթ. կառուցվել են բարձրահարկ շենքեր, բնակելի համալիրներ, քաղաքային նոր շրջաններ (Պեդրեգալ, Նոնոալկո-Տլատելոլկո՝ Երեք մշակույթի հրապարակով են), «Ռուտա-Ամիստադ» օղակաձև մայրուղին: Հատկապես շատ նախագծեր են իրականացրել ճարտ-ներ Պ. Ռամիրես Վասկեսը («Ացտեկա» մարզադաշտը, 1968), Լ. Բառագանը, Խ. Օ'Գորմանը, Ֆ. Կանդելան (Լա Վիրխեն Միլագրոսա եկեղեցի, 1954, Մարզապալատ, 1968), Մ. Գյորիցը: Մոնումենտալ-դեկորատիվ արվեստի նշանավոր ստեղծագործություններ են Դ. Ռիվերայի, Խ. Կ. Օրոսկոյի, Դ. Սիկեյրոսի որմնանկարները Ազգային նախապատրաստական դպրոցում և Գեղեցիկ արվեստների պալատում, Սիկեյրոսի, Ռիվերայի, Խ. Չավես Մորադոյի, Օ'Գորմանի խճանկարները համալսարանական քաղաքի շենքերի ճակատներին: Մ-ում են Կարլոս IV-ի (բրոնզ, 1803, Մ. Տոլսա), Կուաուտեմոկի (բրոնզ, 1878—87, Մ. Նորենյա) քանդակագործական հուշարձանները, Հեղափոխության հուշարձանը (1933—38, ճարտ.՝ Կ. Օբրեգոն Սանտասիլյա):

**Ուսումնական հաստատությունները, գիտական և կուլտուրական հիմնարկները:** Մ-ում են գտնվում բուհերից՝ Ազգային ինքնավար համալսարանը, Ազգային պոլիտեխնիկական ինստ-ը, Բանվորական, Կանանց, Ամերիկյան, Իբերաամերիկյան և այլ համալսարաններ, Ինժեներների բարձրագույն դպրոցը, Ազգային կոնսերվատորիան, Գյուղատնտեսության ազգային դպրոցը, Պատմության և մարդաբանության ազգային դպրոցը ևն, գիտական հիմնարկներից՝ Գիտությունների ազգային, Լեզվի մեքսիկական, Իրավունքի և օրենսդրության մեքսիկական, Բժշկության ազգային մեքսիկական և այլ ակադեմիաներ, Ազգային աստղադիտարանը ևն: Գործում են ավելի քան 20 խոշորագույն գրադարան, այդ թվում՝ Ազգային գրադարանը (ավելի քան 800 հզ.



Տեսարան Մեխիկոյից



Մ ե խ ի կ ո. Կաթողիկե տաճարը (1563—1667, ավարտվել է 1813-ին)



Մ ե խ ի կ ո. բարձրահարկ շենք Տլատելոլկո արևմտյան միկրոշրջանում

գիրք), 13 թանգարան, այդ թվում՝ Մարդաբանության ազգային, Պատմության ազգային թանգարանները, պատկերասրահներ (ժամանակակից և հին արվեստի, Գեղանկարչության և քանդակագործության Սան Կարլոս, Կրոնական արվեստի ևն):

1972-ին աշխատել են Ազգային օպերան, Ազգային սիմֆոնիկ նվագախումբը, «Դել Բոսկե», «Մանուել Մ. Պոնսե» և այլ երաժշտա-թատերական դահլիճները, «Խիմենես Ռուեդա», «Խոլա», «Հիդալգո», «Ինսուրխենտես», «Տեպեյակ» և այլ դրամատիկական թատրոններ, Մանկական և «Գինյոլ» տիկնիկային թատրոնները:

**ՄԵԽԼՈՒ** (իսկական անունը, ծն. և մահ. թթ. անհտ.), գյուղացիական շարժման առաջնորդ Հայաստանում (XVII դ. 1-ին քառորդ): Ծագումով՝ Ուտիքից: Սովորել է Գանձասարի հայոց կաթողիկոսարանում և ստացել սարկավագի աստիճան: Արցախում քարոզել է հակաեկեղեցական գաղափարներ, որի համար կարգալույծ է արվել: Մ. շարունակել է պայքարը հոգևոր ու աշխարհիկ ավատատերերի դեմ, քարոզել, որ վանքապատկան գյուղերի հողերը պատկանում են գյուղական համայնքներին, մերկացրել հոգևորականներին, պահանջել գույքային հավասարություն: Շքեղազգեստ բարձրաստիճան վանականներից տարբերվելու համար կրել է երկու մեխով (որտեղից և «Մեխլու» մականունը) ամրացված այծամազե փալաս: Ձևանալով որպես Քրիստոս՝ իր հետևորդներից էլ 12 հոգու (իբր Քրիստոսի 12 աշակերտներ) է ընտրել՝ հոփացած եկեղեցականներին պատժելու համար: Մ-ի գլխավորած շարժումը սկզբում հանդես է եկել կրոնական քողի տակ, սակայն 1606—1620-ին ընդունել է մեծ թափ (մասնակիցների թիվն անցել է 500-ից) և ստացել սոցիալական բնույթ: Վախենալով շարժման ծավալից՝ հոգևորականությունը պահանջել է Մ-ին հեռացնել Արցախից: Իր հետևորդներով Մ. անցել է Այրարատ և Քանաքեռում ընդհարվել Երևանի Ամիրգունա խանի զորքի հետ: Շարժումը ճնշվել է, իսկ Մ. արտաքսվել խանության սահմաններից: Այնուհետև Մ. եղել է Կարինում, Երուսաղեմում և Ամիդում:

*Գրկ.* Զ ա ք ա ր ի ա Ք ա ն ա ք ե ռ ց ի, Պատմագրութիւն, հ. 1—3, Վաղ-պատ, 1870: Գ ր ի գ ո ր Դ ա ր ա ն ա ղ ց ի, Ժամանակագրութիւն, Երուսաղեմ, 1915: Հ ա ր ո ւ թ յ ո ւ ն յ ա ն Հ., Գյուղացիական շարժումները Հայաստանում XVII դարի առաջին քառորդում, Ե., 1939:

*Հ. Հարությունյան*

**ՄԵԽՏԻ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Մուշի գավառում: 1909-ին ուներ 25 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանցից շատերը զոհվել են աքսորի ճանապարհին: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՄԵԾ ԱԳԱՐԱԿ**, Մ ե ծ Ա գ ր ա կ, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Երզնկայի գավառում: 1909-ին ուներ 57 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ և արհեստներով: Գյուղն ուներ եկեղեցի և դպրոց: Մ. Ա-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին, Կամախի կիրճում:

**ՄԵԾ ԱՂԻ ԼԻՃ** (Great Salt Lake), մնացորդային անհոսք աղի լիճ ԱՄՆ-ի արևմուտքում (Յուտա նահանգ): Բարձրությունը ծովի մակարդակից 1280 *մ* է, մակերեսը՝ 2500—6000 *կմ*²: Մակարդակի և մակերեսի փոփոխությունները պայմանավորված են ձնհալքով և մթնոլորտային տեղումներով: Միջին խորությունը 4,5—7,5 *մ* է, առավելագույնը՝ 13—15 *մ*, աղիությունը՝ 137—300‰: Աղերի ընդհանուր պաշարները մոտ 6 մլրդ *տ* են (հիմնականում՝ կերակրի և գլաուբերյան): Լճի ափերին են Սոլթ Լեյք Սիթի, Օգդեն քաղաքները: Լիճը հատվում է արհեստական հողաթմբի վրա կառուցված Հարավխաղաղօվկիանոսյան (Սաութ Պասիֆիկ) երկաթուղով: Կա աղերի արդյունահանում:

**ՄԵԾ ԱՅՐՈՒՄ**, գյուղ Հայկական ՍՍՀ Թումանյանի շրջանում, Դեբեդ գետի բարձրադիր ձախ ափին, շրջկենտրոնից 17 *կմ* հյուսիս-արևելք: Միավորված է Շնողի պտղաբուծական սովետական տնտեսության հետ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կինո, կապի բաժանմունք, կենցաղսպասարկման տաղավար, մսուր-մանկապարտեզ, բուժկայան: Հիմնադրվել է 1830-ին:

**ՄԵԾ ԱՎԱԶԱՆ** (Great Basin), բարձրավանդակ Հյուսիսային Ամերիկայի Կորդիլիերաներում, ԱՄՆ-ի արևմուտքում: Տարածությունն ավելի քան 500 հզ. *կմ*² է: Կազմված է բազմաթիվ կարճ լեռնաշղթաներից (բարձրությունը՝ մինչև 3900 *մ*) և ընդարձակ գոգավորություններից (ավազաններից): Ռելիեֆը ձևավորվել է մինչքեմբրյան-մեզոզոյան ծալքավորման հիմքի վրա: Կայնոզոյում ենթարկվել է վարնետվածքային տեղախախտումների, որոնք ուղեկցվել են հրաբխային գործունեությամբ: Կլիման խիստ ցամաքային է, մեծ մասում՝ մերձարևադարձային, հս-ում՝ բարեխառն: Հուլիսի միջին ջերմաստիճանը 20—22°C է (առավելագույնը՝ 56,7°C), հունվարինը՝ 0—2°C (նվազագույնը՝ —30°C, լեռներում՝ մինչև —60°C), տարեկան տեղումները՝ մոտ 200 *մմ*, առանձին գոգավորություններում 100 *մմ*-ից էլ պակաս, լեռների արմ. լանջերին՝ մինչև 500 *մմ*: Գլխավոր գետը Հումբոլդտն է: Խոշոր լճերն են Մեծ աղի լիճը, Պիրամիդը, Սևիրը, Յուտան: Ոռոգման կարևոր աղբյուր են արտեզյան ջրհորները: Տիրապետում են գորշ, ալկալի, աղուտային և լեռնաշագանակագույն հողերը: Բուսածածկույթը հիմնականում անապատային և կիսաանապատային է:

**ՄԵԾ ԱՐԱԳՅԱԼ**, հայաբնակ գյուղ Վրացական ՍՍՀ Բոգդանովկայի շրջանում, Փարվանա գետի ափին, շրջկենտրոնից 7 *կմ* հյուսիս-արևելք: Կոլտնտեսությունն զբաղվում է անասնապահությամբ, հացահատիկի, կարտոֆիլի և կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, գրադարան, կուլտուրայի տուն, բուժկայան, մանկապարտեզ: Կա եկեղեցի (1890): Գյուղը հիմնադրվել է 1829-ին:

**ՄԵԾ ԱՐԳԵԼԱԽՈՒԹ** (Great Barrier Reef), կորալային կղզիների և խութերի շարք: Ձգվում է Ավստրալիայի հս-արլ. ափին զուգահեռ՝ Նոր Գվինեայի հվ. ափերից մինչև Սանդի Քեյփ հրվանդանը: Ունի 2300 *կմ* երկարություն, 2 *կմ*-ից (հս-ում) 150 *կմ* (հվ-ում) լայնություն: Խութերի մեծ մասը գտնվում է ջրի տակ և մերկանում է միայն տեղատվության ժամանակ: Մ. ա. մայր ցամաքից բաժանվում է Մեծ ծովալճակով կամ «Ներքին ջրանցքով»: Օվկիանոսի կողմից ունի մոտ 20 անցում:

**ՄԵԾ ԱՐՋ** (լատ. Ursa Major), համաստեղություն երկնքի հյուսիսային կիսագնդ-

դում: Գտնվում է Վիշապ, Եզնարած, Որսկան շներ, Վերոնիկայի վարսեր, Առյուծ, Փոքր առյուծ, Լուսան, Ընձուղտ համաստեղությունների միջև: Մ. ա-ի յոթ պայծառ աստղերից (վեցը՝ 2-րդ, մեկը՝ 3-րդ աստղային մեծության) կազմված պատկերը շերեփ է հիշեցնում (նկ.): α և β աստղերը միացնող ուղիղ գծի շարունակության վրա գտնվում է *Բևեռային աստղը*. ζ-ն




կրկնակի աստղ է (*Միցար* և *Ալկոր*): Դիտվում է ամբողջ տարին:

Հայերը Մ. ա-ին անվանել են նաև Եզներ, Սայլ, Շերեփ:

**ՄԵԾ ԱՐՋԻ ԼԻՃ** (Great Bear Lake), գտնըվում է Կանադայի հյուսիս-արևմուտքում: Բարձրությունը ծովի մակարդակից 119 *մ* է, մակերեսը՝ մոտ 30 հզ. *կմ²*, խորությունը՝ մինչև 137 *մ*: Ունի սառցադաշտատեկտոնական ծագում: Լճից սկիզբ է առնում Մեծ արջի գետը: Սառցակալվում է հոկտեմբերից-հունիս: Նավարկելի է (օգոստոս-սեպտեմբեր): Ափերը բարձրադիր են, ժայռոտ, խիստ մասնատված, ծածկված փշատերև անտառներով:

Պորտ Ռադիի մոտ կա ուրանի և ռադիումի հանքավայր: Լճում կա ձկնորսություն:

**ՄԵԾ ԲԱԼԽԱՆ**, լեռնաշղթա Թուրքմենական ՍՍՀ հարավում: Ուզբոյի չոր հունով բաժանվում է Փոքր Բալխանից և Կոպետդաղ լեռնաշղթայից: Երկարությունը մոտ 70 *կմ* է, բարձրությունը՝ մինչև 1880 *մ* (Առլան լեռ): Անտիկլինորիում է՝ հս. զառիթափ և հվ. մեղմաթեք լանջերով: Արմ-ում սուզվում է մերձկասպյան հարթավայրի նորագույն նստվածքների տակ: Կազմըված է գլխավորապես յուրայի և կավճի կրաքարերից ու ավազաքարերից: Լանջերը խիստ մերկացած են: Հվ. լանջը կտըրտված է կիրճերով: Տիրապետում են անապատային (մինչև 800 *մ* բարձրությունները), կիսաանապատային և լեռնատափաստանային լանդշաֆտները՝ լեռնային քսերոֆիտներով ու նոսր անտառներով: Կիրճերում աճում են թփուտներ: Ոչ մեծ հարթ տեղամասերը օգտագործվում են որպես անջրդի ցանքատարածություններ: Մ. Բ-ի մոտ կան նավթի հանքավայրեր (Նեբիդ դաղ):




**ՄԵԾ ԲՐԻՏԱՆԻԱ** (Great Britain), պաշտոնական անվանումը՝ Մ ե ծ  Բ ր ի տ ա ն ի ա յ ի  և  Հ յ ո ւ ս ի ս ա յ ի ն  Ի ռ լ ա ն դ ի ա յ ի  Մ ի ա ց յ ա լ  Թ ա գ ա վ ո ր ո ւ թ յ ո ւ ն (The United Kingdom of Great Britain and Northern Ireland)

Բ ո վ ա ն դ ա կ ո ւ թ յ ո ւ ն



### I. Ընդհանուր տեղեկություններ

Մ. Բ. կղզային պետություն է Եվրոպայի հս-արմ-ում: Զբաղեցնում է Մեծ Բրիտանիա կղզին, Իռլանդիա կղզու հս-արլ. մասը, Անգլսի, Ուայթ, Նորմանդական, Օրկնեյան, Հեբրիդյան, Շետլանդական և մի շարք ավելի մանր կղզիներ: Արմ. ափը ողողվում է Ատլանտյան օվկիանոսի, արլ. և հվ. ափերը՝ Հյուսիսային ծովի, Լա Մանշ ու Պա դե Կալե նեղուցների ջրերով: Տարածությունը 244,1 հզ. *կմ²* է, բնակչությունը՝ 56 մլն (1979): Մայրաքաղաքը՝ Լոնդոն:

Մ ե ծ  Բ ր ի տ ա ն ի ա յ ի  տ ա ր ա ծ ք ի  կ ա զ մ ը

| | Տարածությունը հզ. *կմ²* | Բնակչությունը մլն մարդ (1973) | Մայրաքաղաքը |
|---|---|---|---|
| Անգլիա | 130,3 | 46,4 | Լոնդոն |
| Հյուսիսային Իռլանդիա (Օլսթեր) | 14,1 | 1,5 | Բելֆաստ |
| Շոտլանդիա | 78,8 | 5,2 | Էդինբուրգ |
| Ուելս | 20,8 | 2,7 | Կարդիֆ |

Մ. Բ. կազմված է պատմաաշխարհագրական 4 մարզից: 1973—75-ի վարչական բաժանումով Անգլիայում ստեղծվել են 39 կոմսություն և 7 մետրոպոլ կոմսություն (այդ թվում նաև Լոնդոնը), Ուելսում՝ 8 կոմսություն, Հյուսիսային Իռլանդիայում՝ 26 օկրուգ, Շոտլանդիայում՝ 12 մարզ:

Մ. Բ. գլխավորում է Համագործակցությունը (The Commonwealth), որը միավորում է նախկինում *Բրիտանական կայսրության* մեջ մտած դոմինիոնների ու տիրույթների մեծ մասը:

### II. Պետական կարգը

Մ. Բ. պառլամենտական միապետություն է: Միասնական սահմանադրություն չունի: Մ. Բ-ի չգրված սահմանադրությունը ձևավորվել է հարյուրամյակների ընթացքում և կազմված է պառլամենտական օրենքներից, դատական նախադեպերից, սահմանադրական համաձայնագրերից կամ սովորույթներից [*Ազատությունների մեծ խարտիա* (1215), Իրավունքի մասին հանրագիր (1628), *Հաբեաս կորպուս ակտ* (1679), *Բիլլ իրավունքների մասին* (1689), *Վեստմինստերյան ստատուտ* (1931) են]: Պետության գլուխը թագավորն է (թագուհին): Թագավորական գմահ իշխանությունը փոխանցվում է ժառանգաբար, արական սեռի ժառանգներին, որոնց բացակայության դեպքում՝ իգական սեռի ժառանգներին: Թագավորը համարվում է գործադիր իշխանության գերագույն կրողը, դատական համակարգի գլուխը, զինված ուժերի գերագույն գլխավոր հրամանատարը, պետ. անգլիկան եկեղեցու աշխարհիկ գլուխը և Համագործակցության գլուխը: Իրավաբանորեն թագավորը իրավասու է նշանակել պրեմիեր մինիստրին, մինիստրներին, դատավորներին, եպիսկոպոսներին և բարձրաստիճան այլ պաշտոնյաների, կնքել միջազգային պայմանագրեր, հայտարարել պատերազմ, կնքել հաշտություն: Նա համարվում է պառլամենտի բաղկացուցիչ մասը [King (Queen) in parliament], հրավիրում է պառլամենտի նըստաշրջանները (որոնք բացվում են նրա գահաճառով), արձակում Համայնքների պալատը, սանկցիա է տալիս պառլամենտի ընդունած օրինագծերին, շնորհում է ներում, պերության, բարոնության, ասպետության ևն պատվավոր կոչումներ: Իրականում թագավորը պետության միայն անվանական գլուխն է (թագավորում է, բայց չի կառավարում), գրեթե բոլոր իրավունքները փաստորեն գտնվում են կառավարության ձեռքին: Ձևականորեն թագավորական իշխանության բարձրագույն մարմինը գաղտնի խորհուրդն է (գործնականորեն շուրջ 150 տարի է, ինչ չի գործում), որի կազմում գմահ մտնում են առանձնապես պատվավոր անձինք (ավելի քան 300 մարդ):

Օրենսդրական իշխանության բարձրագույն մարմինը պառլամենտն է՝ կազմված թագավորից, Լորդերի պալատից և Համայնքների պալատից, որոնք միմյանցից անկախ են, ստեղծվում են տարբեր սկզբունքներով, ունեն առանձին նստավայրեր և տարբեր լիազորություններ, սա-

կայն օրենքի ընդունման համար պահանջվում է նրանց միասնական դիրքորոշումը: Մ. Բ-ի համազգային ներկայացուցչական հաստատությունը ներքին պալատն է՝ Համայնքների պալատը (630 դեպուտատ, Անգլիայից՝ 511, Ուելսից՝ 36, Շոտլանդիայից՝ 71, Հյուսիսային Իռլանդիայից՝ 12): Ընտրություններն անց են կացվում մաժորիտար համակարգով՝ 1 օկրուգից 1 դեպուտատ: Ըստ օրենքի դեպուտատ կարող է ընտրվել 21 տարին լրացրած յուրաքանչյուր բրիտ. հպատակ, սակայն բացառությունները շատ են: Ակտիվ ընտրական իրավունք ունեն 18 տարին լրացրած քաղաքացիները: Լորդերի պալատը (պառլամենտի վերին պալատ) կազմում են աշխարհիկ և հոգևոր պերերը (ավելի քան 1000 մարդ):

Ձևականորեն պառլամենտի գերիշխանությունը բացարձակ է, սակայն փաստորեն օրենքներն ու բյուջեն ընդունում է կառավարությունը: Մինիստրների գերակշռող մասը Համայնքների պալատի անդամ է, Լորդերի պալատում կառավարությունը ներկայացված է նրանց փոքր մասով: Կառավարությունը գլխավորում է պրեմիեր մինիստրը, որը, սովորաբար, Համայնքների պալատում մեծամասնություն կազմող կուսակցության ղեկավարն է: XVIII դ. սկզբից Մ. Բ-ի գործադիր իշխանության բարձրագույն մարմինը փաստորեն կառավարությունն է՝ Մինիստրների կաբինետը (կազմվում է ընտրություններում հաղթանակ տարած կուսակցության անդամներից), որն իր ձեռքում կենտրոնացրել է ներքին և արտաքին քաղաքականության կարևորագույն լծակները: Թեև կաբինետը չի կարող հրապարակել նորմատիվ ակտեր, սակայն իրականացնում է ամբողջ իրավաստեղծ գործունեությունը: Մ. Բ-ի օրենսդրությամբ մինիստրների կաբինետի ստեղծում չի նախատեսված: Իրավապես կառավարությունը հաշվետու է Համայնքների պալատին:

Մ. Բ. ունիտար պետություն է՝ կազմված չորս պատմական մարզերից (Անգլիա, Ուելս, Հյուսիսային Իռլանդիա, Շոտլանդիա): Անգլիան, Շոտլանդիան և Ուելսը ունեն տեղական ինքնավարության սեփական մարմիններ, իրավական և դատական ինքնուրույն համակարգ, ազգային եկեղեցի: Մ. Բ-ի Մինիստրների կաբինետի կազմի մեջ մտնում են Ուելսի և Շոտլանդիայի հարցերով պետ. քարտուղարներ: Հյուսիսային Իռլանդիան վարչական ինքնավարության սահմանափակ իրավունքներ ունի: Այստեղ գործադիր լիազորություններով օժտված է նահանգապետը, որին նշանակում է թագավորը. օրենսդրական մարմինը երկպալատ (Համայնքների պալատ, Սենատ) պառլամենտն է: Բոլոր մարմինների լիազորությունները սահմանափակ են, և փաստորեն Հյուսիսային Իռլանդիան կառավարում է Մ. Բ-ի կառավարությունը: Երկրի վարչական բոլոր միավորների ինքնավարության մարմինը ընտրովի խորհուրդն է: Կոմսությունների, մետրոպոլ-կոմսությունների և մունիցիպալային քաղաքների խորհուրդների կազմի մեջ մտնում են նախագահը և ավագները (օլդերմենները): Տեղական ինքնավարության մարմինները զբաղվում են բարեկարգման, տրանսպորտի, ջրամատակարարման, կրթության, հասարակական կարգի պահպանման, քաղաքացիական պաշտպանության, հակահրդեհային ևն հարցերով:

Մ. Բ-ում միասնական դատական համակարգ գոյություն չունի: Բարձրագույն կենտրոնական մարմինը արդարադատության գերագույն դատարանն է, որի կազմի մեջ մտնում են բարձր և ապելյացիոն դատարանները: Դատական բարձրագույն ատյանը Լորդերի պալատն է: Փաստորեն գործում է դատական 3 համակարգ: Անգլիայում և Ուելսում քրեական գործերի առաջին ատյանը մագիստրատների դատարանն է: Այդպիսի դատարանի կազմի մեջ մտնում են 2—7 հաշտարար դատավոր (մասնագիտությամբ ոչ իրավաբան): Խոշոր քաղաքներում հաշտարար դատավորներ կարող են նշանակվել իրավաբաններ, որոնք գործերը քննում են միանձնյա: Կոմսություններում և քաղաքներում տարեկան ոչ պակաս, քան 4 անգամ հրավիրում են հաշտարար դատավորների նըստաշրջաններ, որտեղ երդվյալ ատենակալների մասնակցությամբ քննվում են առավել կարևոր քրեական գործեր: Ասիզների դատարանները քննում են հաշտարար դատավորների հարուցած գործերը: Լոնդոնի կենտրոնական քրեական դատարանը քննում է Մեծ Լոնդոնում կատարված հանցագործությունների գործերը: Ապելյացիոն գանգատները տրվում են բարձր դատարանին կամ, առանձին դեպքերում (երբ ծագում են «համապետական նշանակության իրավաբանական հարցեր»)՝ Լորդերի պալատին: Անգլիայում և Ուելսում քաղաքացիական գործերով առաջին ատյանը կոմսության դատարանն է, որտեղ դատավորը գործերը քննում է միանձնյա (կողմերից մեկի խնդրանքով գործի քննությանը կարող են մասնակցել երդվյալ ատենակալները): Շոտլանդիայում քրեական գործերով առաջին ատյանի դատարանները քաղաքների ոստիկանական դատարաններն են, մարզերում՝ հաշտարար դատարանները: Կան նաև շերիֆային դատարաններ: Առավել կարևոր գործերը որպես առաջին ատյանի դատարաններ քննում է բարձր դատարանը, որը նաև ապելյացիոն իրավասություն ունի: Բարձրագույն ատյանը նստաշրջանային դատարանն է, որի վերին պալատը քննում է քաղաքացիական գործեր, ներքինը ապելյացիոն ատյան է: Հյուսիսային Իռլանդիայում քրեական և քաղաքացիական գործերի առաջին ատյանի դատարանները օկրուգների և խառը իրավասության (փոքր նստաշրջաններ) դատարաններն են: Դատական բարձրագույն ատյաններն են գերագույն դատարանը՝ բաղկացած բարձր և ապելյացիոն դատարաններից, և քրեական ապելյացիոն դատարանը: Մ. Բ-ում կան նաև տարբեր տեսակի հատուկ դատարաններ, վարչական տրիբունալներ, զինվորական դատարաններ:

**III. Բնությունը**

Մ. Բ. գտնվում է Եվրոպայի բարեխառն գոտու մերձատլանտյան հատվածում: Բնության վրա հսկայական ազդեցություն ունի ծովը: Ափագիծը խիստ կտրտված է: Առավել խոշոր ծոցերն են՝ արմ-ում Ֆերթ օֆ Լոռն, Ֆերթ օֆ Կլայդ, Սոլուեյ Ֆերթ, Քարդիգան, Բրիստոլի, հվ-ում՝ Լայմ, արլ-ում՝ Ուոշ, Ֆերթ օֆ Ֆորտ, Մարի Ֆերթ:

**Ռելիեֆը**: Շոտլանդիայում, Հյուսիսային Իռլանդիայում, Ուելսում ու Հյուսիսային Անգլիայում գերիշխում են միջին բարձրության լեռները և գետահովիտներով խոր կտրտված, գագաթային մասում հարթված բարձրությունները: Ռելիեֆի ձևավորման գործում կարևոր դեր են խաղացել տեկտոնական ուղղաձիգ շարժումները, ինչպես նաև հողմահարումն ու պլեյստոցենյան սառցապատումը: Առավել խիստ մասնատված է Շոտլանդիայի ռելիեֆը, ուր բարձրանում են Հյուսիսշոտլանդական բարձրավանդակը (այստեղ է Մ. Բ-ի ամենաբարձր կետը՝ Բեն Նևիս լեռը, 1343 *մ*) և Հարավշոտլանդական բարձրությունը (Մերիկ լեռ, 842 *մ*), որոնք անջատված են Միջինշոտլանդական դաշտավայրով: Հարավային Շոտլանդիայի ռելիեֆի նման ռելիեֆ ունի Հյուսիսային Իռլանդիան: Շոտլանդիայից հվ. տարածվում են Պենինյան (Քրոս Ֆել լեռ, 893 *մ*) և Քամբերլենդի (Սքոֆել լեռ, 978 *մ*), Ուելս թերակղզում՝ Քեմբրի լեռները (Սնոուդոն լեռ, 1085 *մ*): Հարավ-Արևելյան Անգլիայում մակերևույթն առավելապես հարթավայրային է, գերակշռում են տափարակ դաշտավայրը (Միդլենդ, Լոնդոնի ավազան ևն):

Բրիտանական կղզիները գրեթե ամբողջապես գտնվում են կալեդոնյան ծալքավորության գոտում, միայն ծայր հվ. մասում կան հերցինյան համակարգի ծալքեր: Օգտակար հանածոներից կան քարածուխ, երկաթի, անագի և այլ գունավոր մետաղների հանքավայրեր: Ետպատերազմյան տարիներին Մ. Բ-ի ափերի մոտ, Հյուսիսային ծովի հատակի ընդերքում, հայտնաբերվել են նավթի և բնական գազի խոշոր հանքավայրեր:

**Կլիման** օվկիանոսային է: Հունվարի միջին ջերմաստիճանը տատանվում է 7°C-ից (Կոռնուոլ թերակղզի) 3,5°C-ի (Արևելյան Անգլիա) միջև. արլ-ում լինում են սառնամանիքներ (մինչև —18°C): Հուլիսին ջերմաստիճանը 16—17°C-ից (Լոնդոնի շրջանում) իջնում է մինչև 11—13°C (Շոտլանդիայում): Տեղումները գրեթե հավասարաչափ են բաշխվում ամբողջ տարվա ընթացքում. առավել առատ են Շոտլանդիայում, Հյուսիսային Իռլանդիայում, Անգլիայի և Ուելսի լեռնային շրջաններում (տարեկան՝ 1000—1500 *մմ*, տեղ-տեղ՝ մինչև 3000 *մմ*), նվազագույնը Հարավ-Արևելյան Անգլիայում է (600—750 *մմ*): Բնորոշ են նշանակալի ամպամածությունն ու մառախուղները:

**Ներքին ջրերը**: Մ. Բ. ունի կարճ, բայց ջրառատ գետերի խիտ ցանց: Գլխավոր գետերն են Սևեռնը, Թեմզան, Ուզը, Թիսը, Թայնը, Իդենը, Թուիդը: Գետերը չեն սառցակալում, հիմնականում ունեն անձրևային սնում, հորդանում են աշնան-ձմռան ամիսներին: Լեռներում կան շատ լճեր (Լոխ Նեյ, Լոխ Լոմոնդ, Լոխ Նես ևն):

**Հողերը, բուսական և կենդանական աշխարհը**: Շոտլանդիայի հս-ում գերիշխում են լեռնապոդզոլային և լեռնատունդրային, արլ. շրջաններում՝ հումուսա-

պոդզոլային, Շոտլանդիայի հվ-ում և Հյուսիսային Իռլանդիայում՝ անտառային ոչ պոդզոլային թթու հողերը, երկրի մերձափնյա դաշտավայրերում՝ ալյուվիալ հողերը: Հողերը խիստ կուլտուրացված են: Անտառներն զբաղեցնում են տարածքի մոտ 7%-ը: Հիմնական զանգվածները գտնըվում են արլ. և հվ. շրջաններում: Առավել տարածված են սոճին, կաղնին և կեչին, հանդիպում են նաև բոխի, հաճարենի և հացենի: Մեծ տարածում ունեն մարգագետինները, լեռնային շրջաններում՝ ճահճոտ պարապուտներն ու հավամրգիի մացառուտները: Բնորոշ կենդանիներից են աղվեսը, նապաստակը, սկյուռը, ոզնին, թռչուններից՝ վայրի աղավնին, Շոտլանդիայում՝ սալամ-կաքավը, խլահավը: Գետերն ու լճերը հարուստ են ձկներով: Բնության պաշտպանության համար Մ. Բ-ում ստեղծված են ազգային պարկեր, ազգային բնական (կոմպլեքսային), անտառների և ջրային թռչունների արգելոցներ: Առավել խոշոր ազգային պարկերն են Լեյք Դիստրիքտը (Քամբերլենդում), Սնոուդոնիան (Ուելսում): Խոշոր արգելոցներ են Դորտմուրը և Բերկոն Բիկոնսը:

**IV. Բնակչությունը**

Բնակչության 84%-ը *անգլիացիներ* են (1978), բնակվում են նաև շոտլանդացիներ, իռլանդացիներ, օլսթերցիներ (անգլո-իռլանդացիներ և շոտլանդա-իռլանդացիներ), ուելսցիներ կամ վալլիացիներ, գելեր, հրեաներ և այլ երկրներից եկած վերաբնակիչներ՝ ճամայկացիներ, հնդիկներ, լեհեր, հայեր և այլք: Պետական լեզուն *անգլերենն* է, դավանանքը՝ բողոքականությունն ու կաթոլիկությունը, տոմարը՝ գրիգորյանը: Բնակչության միջին խտությունը 1 *կմ*$^2$ վրա 229 մարդ է: Տնտեսապես ակտիվ բնակչությունը 1970-ական թթ. կեսերին կազմում էր ամբողջ բնակչության 46%-ը:

Մ. Բ. աչքի է ընկնում ուրբանիզացիայի բարձր մակարդակով, բնակչության մոտ 80%-ը ապրում է քաղաքներում: Քաղաքային բնակչության 2/5-ը կենտրոնացած է քաղաքային խոշոր շրջաններում՝ կոնուրբացիաներում՝ Լոնդոնի, Մանչեստրի, Արևմտյան Միդլենդի, Արևմտյան Յորքշիրի, Մերսիսայդի և Թայնսայդի:

**V. Պատմական ակնարկ**

Մ. Բ-ի տարածքում մարդու բնակության հնագույն հետքերը վաղ և միջին հին քարի դարից են: Ուշ բրոնզի և վաղ երկաթի դարաշրջանում (մ. թ. ա. 800—700) մայր ցամաքից կղզի են գաղթել կելտական ցեղեր՝ *բրիտները*: Մ. թ. I դ. կեսին կղզին նվաճել են հռոմեացիները (Բրիտանիա պրովինցիա), V դ. կեսից մինչև VII դ. սկիզբը՝ հյուսիս-գերմ. ցեղերը՝ անգլերը, սաքսերը, յուտերը (բացառությամբ Ուելսի և Շոտլանդիայի), որոնք ստեղծել են մի շարք վաղֆեոդալական թագավորություններ (Քենտ, Ուեսեքս, Մերսիա ևն): *Անգլո-սաքսոնական նվաճումների* ընթացքում բրիտների մեծ մասը ոչնչացվել է, մի մասը արտամղվել հս. (Կալեդոնիա) և արմ. (Ուելս, Կոռնուոլ), մյուսը գաղթել Արմորիկա թերակղզի (ներկայիս Բրետան): Մնացողները դարձել են ստրուկ կամ կիսազատ, ձուլվել նվաճողների հետ: VI դ. վերջին սկսվել և VII դ. 2-րդ կեսին ավարտվել է անգլո-սաքսերի քրիստոնեացումը: VIII դ. վերջին սկսվել են նորմանների (անգլ. պատմության մեջ ընդունված է դանիացիներ) արշավանքները. նրանք նվաճել են երկրի ամբողջ հս-արմ. և այնտեղ տարածել իրենց սովորույթներն ու բարքերը (այսպես կոչված՝ «դանիական իրավունքի մարզ»): IX դ. սկզբին ավարտվել է անգլո-սաքսոնական պետությունների միավորումը մեկ միասնական թագավորության՝ Անգլիայի մեջ: *Ալֆրեդ Մեծ* թագավորի (871—մոտ 900) օրոք կազմվել է օրենքների առաջին համաանգլիական ժողովածուն: Հաստինգսի ճակատամարտից (1066) հետո Անգլիան նվաճել է նորմանդական դուքս Վիլհելմը և դարձել Անգլիայի թագավոր (*Վիլհելմ I* Նվաճող, Նորմանդական դինաստիայի հիմնադիրը): Երկրում արագացել է ֆեոդալական հարաբերությունների զարգացումը: Թագավորները խոշոր ֆեոդալների դեմ պայքարում հենվելով ասպետության և քաղաքների վրա՝ ուժեղացրել են իրենց իշխանությունը. դրան է նպաստել նաև Ֆրանսիայի զգալի մասի նվաճումը Հենրի II Պլանտագենետի օրոք (1154—89): XII դ. 2-րդ կեսից սկսվել է Իռլանդիայի նվաճումը: Հովհան Անհողի (1199—1216) ներքին և արտաքին անհաջող քաղաքականությունն առաջ է բերել բարոնների ապստամբություն (1215). թագավորը ստիպված ստորագրել է Ազատությունների մեծ խարտիան, որով զգալի զիջումներ է կատարել խոշոր ֆեոդալներին ու հոգևորական վերնախավին: 1265-ին ստեղծվել է պառլամենտ, որը վերջնականապես ձևավորվել է Էդուարդ I-ի (1272—1307) օրոք: Պարտվելով Ֆրանսիայի դեմ Հարյուրամյա պատերազմում 1337—1453՝ Անգլիան կորցրեց մայր ցամաքի իր բոլոր տիրույթները, բացի Կալեից: XIV դ. ուժեղացավ դասակարգային պայքարը գյուղում և քաղաքում: Գյուղացիական հուզումները վերածվեցին հակաֆեոդալական ապստամբության (տես *Ուոտ Թայլերի ապստամբություն 1381*) և ընդգրկեցին ամբողջ Անգլիան: XV դ. գրեթե լիովին վերացավ գյուղացիների անձնական ճորտական կախումը: Երկու ախոյան ֆեոդալական դինաստիաների՝ Լանքաստերների և Յորքերի մրցապայքարը գերիշխանության համար (տես *Կարմիր և սպիտակ վարդերի պատերազմներ 1455—1485*) ավարտվեց երկու տոհմերի, ինչպես նաև գրեթե ամբողջ ֆեոդ. ավագանու կործանմամբ, և իշխանության գլուխ անցավ Թյուդորների նոր դինաստիան (1485—1603):

*Կապիտալի նախասկզբնական կուտակումը* Անգլիայում տեղի էր ունենում գյուղացիների հողակտորները բռնագրավելու, դրանք ցանկապատելու (տես *Ցանկապատում*) և արոտավայրերի վերածելու ուղիով: Հողազուրկ գյուղացիներին կլանում էր օրավուր աճող կապիտալիստական մանուֆակտուրան: Հենրի VIII-ի (1504—47) ժամանակ սկսված *Ռեֆորմացիան* (1530-ական թթ.), որը վերացրեց պապի իշխանությունը անգլ. եկեղեցու նկատմամբ և եկեղեցին ենթարկեց թագավորին, ուղեկցվում էր վանքապատկան հողերի բռնագրավմամբ, որոնք անցնում էին «նոր ազնվականությանը» (ջենտրիներ) ու բուրժուազիային: Եղիսաբեթ թագուհու (1558—1603) օրոք Անգլիան ձեռնամուխ եղավ գաղութային նվաճումների (Իռլանդիայում, Հյուսիսային Ամերիկայում): Ծովում գերիշխելու պայքարը Իսպանիայի դեմ ավարտվեց Անգլիայի հաղթանակով (իսպ. «Անհաղթ արմադայի» ջախջախումը 1588-ին): Ֆեոդալաբացարձակապետական կարգերի՝ XVI դ. վերջին սկսված ճգնաժամի պայմաններում *Ստյուարտների* [Հակոբ I (1603—25) և Կարլոս I-ի (1625—49)] ներքին և արտաքին քաղաքականության անհամապատասխանությունը բուրժուազիայի ու ջենտրիների շահերին առաջ բերեց բուրժ. ընդդիմություն բացարձակապետությանը: 1640-ին, ժող. ապստամբության իրավիճակում, սկսվեց բուրժ. հեղափոխություն (տես *Անգլիական բուրժուական հեղափոխություն 1640—1660*), իշխանությունն անցավ *Երկարատև պառլամենտին*: Առաջին (1642—46) և երկրորդ (1648) քաղաքացիական պատերազմներն ավարտվեցին թագավորական զորքերի ջախջախմամբ, Անգլիան հռչակվեց հանրապետություն: Իշխանության գլուխ կանգնեց արմատական բուրժուազիան՝ *ինդեպենդենտները*, որոնք սկսեցին հալածել դեմոկրատական շարժումը, հատկապես *լեվելլերներին* և

*դիգերների*։ 1653-ին հաստատվեց Օ. *Կրոմվելի* պրոտեկտորատը (մինչև 1658-ը), 1660-ին վերականգնվեց Ստյուարտների միապետությունը։ Ֆեոդ. հետադեմ քաղաքականությունն առաջ բերեց պետ. հեղաշրջում (տես *«Փառահեղ հեղափոխություն» 1688—1689*), 1688-ին Հակոբ II թագավորը տապալվեց, և պառլամենտը թագը հանձնեց հոլանդական շտատհալտեր Վիլհելմ Օրանացուն (Հակոբ II-ի դստեր ամուսնուն, 1689-ից՝ Անգլիայի թագավոր Վիլհելմ III)։ Նույն ժամանակ երկրում ձևավորվեցին երկու տիրապետող կուսակցություններ՝ *վիգեր* (թագավորի հակառակորդներ) և *տորիներ* (թագավորի կողմնակիցներ), XIX դ կեսին դրանց հիման վրա ստեղծվեցին, համապատասխանաբար, լիբերալ և պահպանողական կուսակցությունները։ 1707-ի ունիայով Շոտլանդիան վերջնականապես միացվեց Անգլիային, և Միացյալ Թագավորությունը կոչվեց Մ. Բ.։ XVII—XVIII դդ. Մ. Բ. խոշոր տիրույթներ գրավեց Հնդկաստանում, Հյուսիսային Ամերիկայում, Ֆրանսիայից զավթեց Կանադան։ XVIII դ. 60—70-ական թթ. ուժեղացավ ազատագրական պայքարը Հյուսիսային Ամերիկայի անգլ. գաղութներում (տես *Անկախության պատերազմ Հյուսիսային Ամերիկայում 1775—83*)։ Ռազմ. անհաջողություններն ու ներքին քաղ. ճգնաժամը Մ. Բ-ին հարկադրեցին 1783-ին ստորագրել Վերսալի հաշտությունը և ճանաչել ԱՄՆ-ի (13 գաղութներ) անկախությունը։ XVIII դ. վերջին —XIX դ. սկզբին Մ. Բ. հեղափոխական, այնուհետև նապոլեոնյան Ֆրանսիայի դեմ կոալիցիայի գլխավոր կազմակերպիչն էր։ Անգլ. բուրժուազիան նապոլեոնյան Ֆրանսիայի ջախջախումը օգտագործեց իր առևտրաարդ. և գաղութային գերիշխանությունը ամրապնդելու համար։ 1814—15-ի Վիեննայի կոնգրեսի որոշմամբ Մ. Բ-ին անցան նրա նվաճած Մալթա կղզին, Կապ գաղութը (Հարավային Աֆրիկայում), Ցեյլոն կղզին և այլ տարածքներ։ Կապիտալի կուտակումը, որը հիմնականում գաղութները թալանելու և սեփական գյուղացիությանը շահագործելու արդյունք էր, հող նախապատրաստեց արդ. հեղաշրջման համար։ 1829-ին Մ. Բ-ին բաժին էր ընկնում ածխի համաշխարհային հանույթի 3/4-ը և թուջի արտադրության 40%-ը։ XIX դ. 30—40-ական թթ. վերելք ապրեց բանվորական շարժումը, որի հիմնական կենտրոններն էին Անգլիայի հս. ու հվ., Շոտլանդիայի և Ուելսի արդ. շրջանները։ Ստեղծվեցին առաջին խոշոր *տրեդ-յունիոնները*, ծավալվեց քաղաքականապես ձևավորված առաջին զանգվածային հեղափոխական բանվորական շարժումը՝ *չարտիզմը*։ Շարունակվեց անգլ. կառավարության գաղութային էքսպանսիան։ Մ. Բ. զավթեց Նոր Զելանդիան (գաղութ հռչակվեց 1840-ին), ընդարձակ տարածքներ Բիրմայում, Հարավային Աֆրիկայում, ավարտեց Հնդկաստանի նվաճումը, զավթողական պատերազմներ մղեց Չինաստանի (1840—42, 1856—60), Աֆղանստանի (1838—42) դեմ, դաժանորեն ճնշեց ազգային-ազատագրական ապստամբությունները Հնդկաստանում (1857—59), Իռլանդիայում (1848—67) ևն։ 1899-ին Մ. Բ-ի գաղութային տիրույթները կազմում էին 30 մլն *կմ*²՝ 345 մլն բնակչությամբ։

1880-ական թթ. նոր վերելք ապրեց բանվորական շարժումը, որի զարգացման վրա ազդել էր I Ինտերնացիոնալի (ստեղծվել էր Լոնդոնում, 1864-ին) գործունեությունը։ Հին տրեդ-յունիոնների փոխարինեցին մասսայական արհմիություններ (նոր տրեդ-յունիոններ)։ 1893-ին կազմվեց անկախ բանվորական կուսակցությունը, 1900-ին՝ լեյբորիստական կուսակցությունը։

1880-ական թթ. կեսին և 1890-ական թթ. սկզբին Մ. Բ-ում երևան եկան առաջին մոնոպոլիաները։ Չնայած անգլ. արդյունաբերության շարունակվող վերելքին, Մ. Բ-ի բաժինը համաշխարհային արդ. արտադրության մեջ նվազում էր (1870-ին Մ. Բ. տալիս էր համաշխարհային արդ. արտադրության 32%, ԱՄՆ՝ 23%, Գերմանիան՝ 13%, 1900-ին, համապատասխանաբար, Մ. Բ.՝ 22%, ԱՄՆ՝ 31%, Գերմանիան՝ 16%)։ Խիստ սրվեցին իմպերիալիստական հակասությունները Մ. Բ-ի [որը զավթել էր Կիպրոս կղզին (1878), Եգիպտոսը (1882), Արևելյան Սուդանը (1898), Բուրական Հանրապետությունը Աֆրիկայում (տես *Անգլո-բուրական պատերազմ 1899—1902*)] և Գերմանիայի միջև, որոնք Մ. Բ-ին դրդեցին 1904-ին համաձայնագիր կնքել Ֆրանսիայի, 1907-ին՝ Ռուսաստանի հետ (տես *Անտանտ*)։ Անգլո-գերմ. հակասությունները վճռական դեր խաղացին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի ծագման գործում։ 1914-ի օգոստ. 4-ին, երբ Գերմանիան պատերազմ հայտարարեց Ռուսաստանին և Ֆրանսիային, Մ. Բ. անմիջապես պատերազմ հայտարարեց Գերմանիային (տես *Առաջին համաշխարհային պատերազմ 1914—18*)։ Պատերազմի հետևանքով Մ. Բ. ընդլայնեց իր գաղութային կայսրությունը (տես *Վերսալի հաշտության պայմանագիր 1919*)։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո Մ. Բ. հակասովետական օտարերկրյա ինտերվենցիայի կազմակերպիչներից էր։ 1920-ական թթ. սկզբին Մ. Բ-ում հուժկու վերելք ապրեց բանվորական շարժումը, 1920-ին ստեղծվեց *Մեծ Բրիտանիայի կոմունիստական կուսակցությունը*։ 1920-ին սկսված տնտ. ճգնաժամի պայմաններում արդ. արտադրությունը կրճատվեց մեկ երրորդով։ 1922-ին Դ. *Լլոյդ Ջորջի* կոալիցիոն կառավարությանը փոխարինեց պահպանողականների (որոնք ընդհատումներով իշխանության գլուխ մնացին մինչև 1940-ը) կառավարությունը։ 1920-ական թթ. լիբերալ կուսակցությունը վերջնականապես իր տեղը զիջեց լեյբորիստներին։ 1924-ին այդ կուսակցության ղեկավար Ջ. Ռ. *Մակդոնալդը* կազմեց առաջին լեյբորիստական կառավարությունը, որը 1924-ին դե յուրե ճանաչեց ՍՍՀՄ, սակայն արդեն 1927-ին Ս. *Բոլդուինի* պահպանողական կառավարությունը (1924—29) խզեց դիվանագիտական հարաբերությունները Սովետական Միության հետ (դրանք վերականգնվեցին 1929-ին՝ լեյբորիստական նոր կառավարության օրոք)։ 1929—33-ին համաշխարհային տնտ. ճգնաժամը ծանր անդրադարձավ Մ. Բ-ի տնտեսության վրա (ավելի քան 2 մլն գործազուրկ)։

Առաջին համաշխարհային պատերազմից հետո Մ. Բ-ի արտաքին քաղաքականությանը բնորոշ էր անգլո-ամերիկյան, անգլո-ճապոնական և անգլո-ֆրանսիական իմպերիալիստական հակասությունների սրումը, բայց Գերմանիայի ռազմ. հզորության մեծացման համեմատ առաջին պլան մղվեցին անգլո-գերմանական հակասությունները։ Ս. Բոլդուինի (1935—37) և Ն. *Չեմբեռլենի* (1937—40) կառավարությունները, ձգտելով ֆաշիստական ագրեսիան ուղղել Սովետական Միության դեմ, ԱՄՆ-ի ու Ֆրանսիայի հետ վարում էին «չմիջամտելու» և ագրեսիայի «թողտվության» քաղաքականություն։ 1938-ին Մ. Բ. և Ֆրանսիան, գործարքի մեջ մտնելով Իտալիայի և Գերմանիայի հետ, Մյունխենում համաձայնագիր կնքեցին (տես *Մյունխենի համաձայնագիր 1938*), անդամահատեցին Չեխոսլովակիան հօգուտ Գերմանիայի, ձախողեցին ֆաշիստական ագրեսիայի առաջն առնելու վերաբերյալ եռակողմ բանակցությունները Սովետական Միության մասնակցությամբ (տես *Մոսկովյան բանակցություններ 1939*) և դրանով հող նախապատրաստեցին նոր համաշխարհային պատերազմի սանձազերծման համար (տես *Երկրորդ համաշխարհային պատերազմ 1939—45*)։ 1939-ի սեպտ. 1-ին Գերմանիան հարձակվեց Լեհաստանի վրա, սեպտ. 3-ին Մ. Բ. պատերազմ հայտարարեց Գերմանիային։ Անգլ. էքսպեդիցիոն ուժերը, որոնք 1940-ին գործում էին Ֆրանսիայում և Բելգիայում, պարտություն կրեցին (տես *Դյունկերկի օպերացիա 1940*)։ Մ. Բ-ի վրա կախվեց գերմ. հարձակման վտանգը։ Սովետական Միության վրա ֆաշիստական Գերմանիայի հարձակումից հետո Ու. *Չերչիլի* կառավարությունը (1940—45) հայտարարեց ՍՍՀՄ-ին օգնելու իր պատրաստակամության մասին։ 1941-ի հուլիսի 12-ին կնքվեց անգլո-սովետական համաձայնագիր Գերմանիայի դեմ համատեղ ռազմ. գործողությունների մասին, օգոստ. 14-ին՝ Ատլանտյան խարտիան Մ. Բ-ի և ԱՄՆ-ի միջև։ Կազմավորվեց հակահիտլերյան կոալիցիա Սովետական Միության, ԱՄՆ-ի և Մ. Բ-ի գլխավորությամբ, որը մեծ նշանակություն ունեցավ ֆաշիստական ագրեսորների դեմ հաղթանակի գործում։ 1942-ի մայիսին ստորագրվեց անգլո-սովետական պայմանագիր հիտլերյան Գերմանիայի ու նրա եվրոպական դաշնակիցների դեմ պատերազմում դաշինքի և ետպատերազմյան շրջանում համագործակցության ու փոխօգնության մասին։ Սակայն անգլ. կառավարությունը չէր կատարում ՍՍՀՄ-ի համար նախատեսված ռազմ. մատակարարումների սահմանված ժամկետներին ու ծավալին վերաբերող համաձայնագրերը և ԱՄՆ-ի հետ ձգձգում էր *երկրորդ ճակատի* բացումը Եվրոպայում։ Համոզվելով, որ Սովետական Միությունը միայնակ, առանց դաշնակիցների օգնության, կարող է ջախջախել ֆաշիզմը և ազատագրել Եվրոպայի ժողովուրդներին, Մ. Բ. և ԱՄՆ բաց արեցին (1942-ի փոխարեն 1944-ի հունիսին) երկրորդ ճակատը և միայն 1944-ի

վերջին ազատագրեցին Ֆրանսիան, Բելգիան, Նիդերլանդները և Կենտրոնական Իտալիան:

Պատերազմից հետո, 1945-ի հուլիսին, իշխանության գլուխ անցավ Ք. *Էտլիի* լեյբորիստական կառավարությունը, որը հանդես եկավ սոցիալական ռեֆորմների և ՍՍՀՄ-ի հետ դաշնակցային հարաբերությունները պահպանելու խոստումներով: Երկրում անցկացվեց արդ. մի շարք ճյուղերի (ածխի, գազի արդյունահանման, մետալուրգիայի ևն), ներքին տրանսպորտի, քաղաքացիական ավիացիայի, անգլ. բանկի են ազգայնացում, որը շահավետ էր ձեռնարկատերերին (նրանք հսկայական փոխհատուցում ստացան իրենց ձեռնարկությունների համար): Մ. Բ. ակտիվ մասնակցություն ունեցավ 1948-ին *«Մարշալի պլանի»* իրականացմանը, ՆԱՏՕ-ի ագրեսիվ խմբավորման (տես *Հյուսիս-Ատլանտյան պակտ 1949*) ստեղծմանը (որի կազմակերպիչներից է), մասնակցեց ԱՄՆ-ի սանձազերծած Կորեական պատերազմին (1950—53): 1951-ին իշխանությունն անցավ պահպանողականներին, որոնք կառավարեցին մինչև 1964-ը: Կառավարությունը հերթականորեն գլխավորեցին Ու. Չերչիլը (1951—55), Ա. *Իդենը* (1955—1957), Հ. *Մակմիլանը* (1957—63), Ա. Դուգլաս-Հյումը (1963—64): Պահպանողականների կառավարման շրջանում Մ. Բ-ի տնտեսությունն ապրեց լճացում և ճգնաժամեր, ուժեղացավ ամերիկյան կապիտալի ներթափանցումը բրիտ. արդյունաբերության մեջ, ավելացան ռազմ. հատկացումները (պետ. բյուջեի մոտ 1/3-ը): Մ. Բ. եղավ ՍԵԱՏՕ (1954) և ՍԵՆՏՕ (1955) ագրեսիվ ռազմ. խմբավորումների նախաձեռնողներից, գաղութատիրության դիրքերը Մերձավոր Արևելքում և Աֆրիկայում ամրապնդելու համար սանձազերծեց անգլո-ֆրանս-իսրայելական ագրեսիան Եգիպտոսի դեմ (1956): Միջազգային կարևորագույն խնդիրներում (գերմ. հարց, զինաթափում, եվրոպական անվտանգություն ևն) Մ. Բ. հանդես եկավ ԱՄՆ-ի հետ միասին՝ ընդդեմ Սովետական Միության և սոցիալիստական երկրների, որի հետևանքով ուժեղացավ կախումը ամեր. իմպերիալիզմից. Մ. Բ-ի տարածքում ստեղծվեցին ամեր. ռազմ. բազաներ: Միաժամանակ ԱՄՆ աստիճանաբար Մ. Բ-ին դուրս մղեց Մերձավոր ու Միջին Արևելքի, Հարավ-Արևելյան Ասիայի, Աֆրիկայի և աշխարհի այլ շրջանների նրա ավանդական շուկաներից ու ազդեցության ոլորտներից:

1964-ին իշխանությունն անցավ լեյբորիստներին (պրեմիեր մինիստր Հ. *Վիլսոն*): 1966-ի պառլամենտական արտահերթ ընտրություններում լեյբորիստները կրկին գերակշիռ մեծամասնություն ստացան Համայնքների պալատում, բայց հուսախաբ արեցին ընտրողներին. շարունակվեց ամեր. կապիտալի ներթափանցումը, ամրապնդվեց մոնոպոլիստական սեկտորը, աճեցին արտաքին պարտքերը, խոշոր գումարներ ծախսվեցին սպառազինությունների վրա, պահպանվեցին գործազրկության մեծ չափերը ևն: Լեյբորիստները պաշտպանեցին ԱՄՆ-ի ագրեսիվ քաղաքականությունը Վիետնամում, աջակցեցին ԳՖՀ-ի ռազմականացմանը, պաշտպանեցին Հարավային Ռոդեզիայի ռասիստական վարչակարգը: 1970-ի պառլամենտական ընտրություններում լեյբորիստները պարտություն կրեցին, իշխանությունն անցավ Է. *Հիթի* պահպանողական կառավարությանը, որը անկարող եղավ լճացումից հանել արդյունաբերությունը, կանգնեցնել ինֆլյացիայի, գների և գործազրկության աճը: Շարունակվում էր 1960-ական թթ. վերջին և 1970-ական թթ. սկզբին ծայր առած հս-իռլանդ. քաղ. ճգնաժամը: 1973-ի հունվ. 1-ին Մ. Բ. դարձավ *Եվրոպական տնտեսական համագործակցության* («ընդհանուր շուկա») անդամ: 1974-ի պառլամենտական արտահերթ ընտրություններում պահպանողականները պարտություն կրեցին, մեծամասնություն չստացան նաև լեյբորիստները: Սակայն, 1974-ի հոկտեմբերի վաղաժամկետ ընտրություններում բացարձակ մեծամասնություն ստանալով, լեյբորիստները կազմեցին կառավարություն (պրեմիեր մինիստր՝ Հ. Վիլսոն), որի «հակաինֆլյացիոն» քաղաքականությունը շոշափելի արդյունք չտվեց. երկրում աճեց գործազրկությունը (1,2 մլն մարդ 1975-ին), սրվեցին սոցիալական հակասությունները, 1976-ի մարտին Վիլսոնը հրաժարական տվեց, լեյբորիստական կուսակցության ղեկավար և պրեմիեր մինիստր դարձավ Ջ. Քալագհանը, որը փորձեց տնտ. դժվարությունները հաղթահարել ի հաշիվ աշխատավորների՝ կրճատելով պետ. ծախսերը սոցիալական կարիքների համար: Գների անընդհատ աճի պայմաններում այդ քաղաքականությունը հանգեցրեց բնակչության մեծամասնության կենսամակարդակի հետագա իջեցման, գործազրկության ավելացման (1,5 մլն, 1978): Օգտվելով լեյբորիստների ներքին և արտաքին (Արևմտյան Եվրոպայում նեյտրոնային զենք տեղաբաշխելու ամեր. պլանների պաշտպանություն, բարդություններ Հյուսիսային Իռլանդիայում, Հարավային Ռոդեզիայում ևն) քաղ. դժվարություններից, պահպանողականները 1979-ի մայիսի պառլամենտական ընտրություններում հաղթանակ տարան. պրեմիեր մինիստր Մ. Թետչերի կառավարությունը հայտարարեց, որ իր խնդիրն է համարում «կանգնեցնել Անգլիայի սողքը դեպի սոցիալիզմ», երկիրը վերադարձնել «դասական կապիտալիզմի հիմունքներին», որի համար խթանվում է «ազատ ձեռներեցությունը», ազգայնացվում են նավաշինական, քաղաքացիական ավիացիայի և մի քանի այլ ճյուղերի ձեռնարկություններ, կրճատվում են սոցիալական կարիքների հատկացումները, սահմանափակվում արհմիությունների իրավունքները (հատկապես գործադուլի իրավունքը) ևն: Արտաքին քաղաքականության ասպարեզում պահպանողական կառավարությունը հանդես է գալիս հօգուտ ՆԱՏՕ-ի ռազմ. հզորության մեծացման, սերտ դաշինքի ԱՄՆ-ի հետ:

**VI. Քաղաքական կուսակցությունները, արհմիությունները և հասարակական այլ կազմակերպություններ**

Պահպանողական կուսակցություն, ստեղծվել է XIX դ. կեսին, տորիների կուսակցության հիման վրա, ունի մոտ 3 մլն անդամ: Արտահայտում է խոշոր արդ. և ֆինանսական կապիտալի, բարձր աստիճանավորների և հողատեր ազնվականության շահերը: Լեյբորիստական կուսակցություն, հիմնվել է 1900-ին, ունի 6,62 մլն անդամ, այդ թվում՝ 5,9 մլն կոլեկտիվ անդամի իրավունքով (հիմնականում՝ արհմիություններ): Լիբերալ կուսակցություն, ստեղծվել է XIX դ. կեսին, վիգերի կուսակցության հիման վրա, ունի 200 հզ. անդամ: Արտահայտում է միջին ու մանր բուրժուազիայի և մտավորականության մի մասի շահերը: Շոտլանդական ազգային կուսակցություն, հիմնվել է 1928-ին, հանդես է գալիս Շոտլանդիային անկախություն տալու դիրքերից: Պլայդ Կամրի («Ազատ Ուելս»), հիմնվել է 1925-ին, հանդես է գալիս հանուն Ուելսի ինքնավարության: Սոցիալ-դեմոկրատական կուսակցություն, ստեղծվել է 1981-ին՝ նախկին լեյբորիստներ Ռ. Ջենկինսի, Շ. Ուիլյամսի և ուրիշների կողմից: Մ. Բ-ի կոմունիստական կուսակցություն, ստեղծվել է 1920-ին, ունի 25,2 հզ. անդամ:

Երկրի խոշորագույն արհմիութենական միավորումը տրեդ-յունիոնների բրիտանական կոնգրեսն է, հիմնվել է 1868-ին, միավորում է 112 արհմիությունների (11,9 մլն անդամ): Տրեդ-յունիոնների շոտլանդական կոնգրես, հիմնվել է 1897-ին: Տրեդ-յունիոնների Ուելսի կոնգրես, հիմնվել է 1973-ին:

Հյուսիսային Իռլանդիայում գործում են՝ յունիոնական, յունիոնական-դեմոկրատական, ազգայնական և սոցիալ-դեմոկրատական լեյբորիստական կուսակցություններ, Քաղաքացիական իրավունքների համար պայքարի ասոցիացիա, Ալյանսի կուսակցություն, Տրեդ-յունիոնների իռլանդական կոնգրես (ստեղծվել է 1959-ին):

Իռլանդիայի կոմունիստական կուսակցություն, հիմնվել է 1933-ին:

Անգլո-սովետական բարեկամության ընկերություն, հիմնվել է 1946-ին, ՍՍՀՄ-ի հետ մշակութային կապերի ընկերություն, հիմնվել է 1924-ին, Շոտլանդիա-ՍՍՀՄ ընկերություն, ստեղծվել է 1945-ին, Հյուսիսային Իռլանդիա-ՍՍՀՄ ընկերություն, Մեծ Բրիտանիա-ՍՍՀՄ ասոցիացիա, հիմնըվել է 1959-ին (պաշտոնական կիսակառավարական կազմակերպություն է):

**VII. Տնտեսա-աշխարհագրական ակնարկ**

Մ. Բ. բարձր զարգացած ինդուստրիալ երկիր է: Արդ. արտադրության ընդհանուր ծավալով (4,4%, 1978) կապիտալիստական աշխարհում գրավում է 5-րդ տեղը (ԱՄՆ-ից, Ճապոնիայից, ԳՖՀ-ից, Ֆրանսիայից հետո): Չնայած տեխ. խոշոր տե-

դաշարժերին, արդ. արտադրանքի ծավալը դանդաղ է ավելանում՝ 1978-ին աճել է ընդամենը 3,1%-ով: Վերելքի կարճատև ժամանակաշրջաններին հաջորդում են ճգնաժամերն ու լճացումները:

Մ. Բ-ի տնտեսությունը ձևավորվել է համաշխարհային արդ. արտադրության և առևտրի մեջ իր ունեցած երկարատև մենաշնորհային դիրքի և գաղութային վիթխարի կայսրության առկայության պայմաններում: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը և ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման բուռն աճը բրիտանական գաղութային կայսրությանը հանգեցրին կործանման: Սակայն, կիրառելով նեոգաղութային քաղաքականություն և կարողանալով համագործակցության մեջ ներգրավել գաղութային կախումից ազատագրված երկրների մեծ մասը, Մ. Բ. այս կամ այն չափով դրանց պահեց իր ազդեցության ոլորտում:

Արդյունաբերության, առևտրի, ֆինանսների մեջ գերիշխող դիրք են գրավում կապիտալիստական մոնոպոլիաները: Խոշոր մոնոպոլիաների թվին են պատկանում՝ «Բրիթիշ էյրքրաֆթ քորփորեյշն» (արտադրում է ինքնաթիռներ, հրթիռներ, կառավարվող արկեր), «Հոքեր Սիդլի գրուփ» (ինքնաթիռներ, էլեկտրոնային և այլ սարքավորում, զանազան հաստոցներ ու մեքենաներ), «Ուեստլենդ էյրքրաֆթ» (ուղղաթիռներ, էլեկտրոնային ավիացիոն սարքավորում), «Ինթերնեշընըլ քոմփյութըրս» (էլեկտրոնային հաշվողական մեքենաներ), «Ջեներըլ էլեքթրիք» (էլեկտրատեխ. մեքենաներ ու սարքեր), «Վիքերս» (ինքնաթիռներ, նավեր, սուզանավեր, տանկեր և ռազմ. այլ տեխնիկա, ինչպես նաև արդ. ու էներգետիկական սարքավորում), «Իմփիրիըլ քեմիքըլ ինդասթրիզ» (քիմ. զանազան արտադրանք), «Ռոյալ դատչ-Շել» և «Բրիթիշ փեթրոլեում քամփընի» (նավթի արդյունահանում, վերամշակում, նավթի ու նավթամթերքների վաճառահանում), «Յունիլևեր» (քիմ., օծանելիքի և սննդի զանազան արտադրանք):

Ետպատերազմյան տարիներին մեծացել է պետ.-մոնոպոլիստական միավորումների դերը, որոնք, ռազմական մի շարք արտադրություններից բացի, ընդգրկել են արդյունաբերության ազգայնացված ճյուղերը (ածխի, գազի, էլեկտրաէներգետիկա, երկաթուղային տրանսպորտ, սև մետալուրգիա, ներքին ջրային տրանսպորտ, ավիագծեր ևն): Ուժեղացել է ամեր. կապիտալի ներթափանցումը երկրի էկոնոմիկայի մեջ:

Գյուղատնտեսությունն աչքի է ընկնում ինտենսիվությամբ և տալիս է երկրին անհրաժեշտ պարենի կեսից ավելին:

Մ. Բ-ի տնտեսության բնորոշ գիծն է մեծ կախվածությունը արտաքին առևտրից: Նրա արդյունաբերությունը գլխավորապես հենվում է ներմուծվող հումքի վրա, մինչդեռ պատրաստի արտադրանքի զգալի մասը նախատեսվում է արտահանման համար:

**Արդյունաբերությունն** ապահովում է համախառն ազգային արդյունքի շուրջ 50%-ը և արտահանության գրեթե 90%-ը: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո կառուցվածքային էական փոփոխություններ են տեղի ունեցել: Կարևոր նշանակություն են ձեռք բերել շատ ավելի նոր ճյուղերը՝ ատոմային, էլեկտրատեխ., էլեկտրոնային, նավթավերամշակման և նավթաքիմ., ավիահրթիռային: Փոխվել է արդյունահանող և մշակող արդյունաբերության հարաբերակցությունը՝ հօգուտ վերջինի. մեծացել է ծանր արդյունաբերության տեսակարար կշիռը:

*Արդյունահանող արդյունաբերություն:* Մ. Բ-ի արտահանման հին ճյուղերից է քարածխի արդյունաբերությունը: Հեղուկ վառելիքի համեմատությամբ ածխի ցածր մրցունակության պատճառով նրա արդյունահանումը կրճատվում է: Ածխի գլխ. ավազաններն են՝ Յորքշիրի, Նորթամբերլենդ—Դարեմի և Հարավային Ուելսի: Հյուսիսային ծովի հատակի ընդերքից արդյունահանում են նավթ և բնական գազ: Արհեստական գազի արտադրությամբ Մ. Բ. Արևմտյան Եվրոպայում 1-ին տեղն է գրավում: Արդյունահանվում է նաև երկաթ, անագ:

*Էներգետիկա:* Էլեկտրաէներգիայի արտադրության մեծ մասը տալիս են ՋԷԿ-երը (86%, 1975), որոնցից առավել խոշորները (ավելի քան 1 մլն *կվտ* հզորությամբ) գտնվում են Թրենթ գետի վրա (Յորքշիրի ածխով աշխատող) և Լոնդոնի մոտ: 1970-ից գործում է բարձր լարվածության «Սուպերգրիդ» միացյալ էներգահամակարգը: Երկրում գործում են ավելի քան 13 ԱԷԿ-ներ, որոնցով արտադրվող էլեկտրաէներգիայի քանակով Մ. Բ. գրավում է 1-ին տեղը Արևմտյան Եվրոպայում: ՀԷԿ-երը տալիս են էլեկտրաէներգիայի 2%-ից էլ պակաս մասը:

*Մշակող արդյունաբերություն:* Սև մետալուրգիան ապահովված է սեփական կոքսով և կիսով չափ՝ երկաթի ցածրորակ հանքաքարով (բարձրորակ հանքաքար ներմուծվում է): Առավել շատ պողպատ ձուլում են Հարավային Ուելսում (Կարդիֆ), Հյուսիս-Արևելյան Անգլիայում (Միդլսբրո), Յորքշիրում (Շեֆիլդ): Գունավոր մետալուրգիան գրեթե ամբողջովին աշխատում է ներմուծվող հումքով: Գունավոր մետաղների մշակումը կենտրոնացած է մեքենաշինության խոշոր կենտրոններում՝ Բիրմինգհեմում, Մեծ Լոնդոնում, Հարավային Լանքաշիրում:

Մեքենաշինությունը արդյունաբերության առաջատար ճյուղն է. լայնորեն զարգացած է երկրի բոլոր շրջաններում: Այս ճյուղում զբաղվածների 1/3-ը բաժին է ընկնում տրանսպորտային մեքենաշինությանը, որի մեջ առավել կարևոր նշանակություն ունի ավտոմոբիլների և ինքնաթիռների արտադրությունը: Ավտոմոբիլների շուրջ 2/3-ը արտահանվում է: Ավտոհավաքման հիմնական գործարանները գտնվում են Մեծ Լոնդոնում, Արևմտյան Միդլենդում (Բիրմինգհեմ, Կովենտրի), Լուտոնում, Օքսֆորդում, իսկ դետալների և հանգույցների արտադրությունը՝ նաև բազմաթիվ այլ քաղաքներում: Ավտոմոբիլների ավելի քան 1/2-ը տալիս են ամեր. ֆիրմաները («Ֆորդ մո-

Արդյունաբերական արտադրանքի հիմնական տեսակների արտադրությունը

| Արտադրանքի տեսակը | 1938 | 1950 | 1965 | 1978 |
|---|---|---|---|---|
| Քարածուխ, մլն *տ* | 231 | 220 | 191 | 123,7 |
| Նավթ, մլն *տ* | — | — | — | 52,8 |
| Բնական գազ, մլրդ $մ^3$ | — | — | — | 38,3 |
| Էլեկտրաէներգիա, մլրդ *կվտ·ժ* | 33,8[1] | 63,3[1] | 194[1] | 266,8 |
| Նավթամթերքներ, մլն *տ* | — | — | — | 89,2 |
| Թուջ, մլն *տ* | 6,9 | 9,8 | 17,8 | 11,4 |
| Պողպատ, մլն *տ* | 10,6 | 16,6 | 27,4 | 20,3 |
| Պղինձ, հզ. *տ* | 130[2] | 188,1[3] | 236,4 | 78,0 |
| Ցինկ, հզ. *տ* | 55,9 | 73,9[3] | 107 | 73,6 |
| Ալյումին (երկրորդային), հզ. *տ* | — | — | 178 | 193,2 |
| Անագ, հզ. *տ* | 32,8 | 29,3[3] | 16,8 | — |
| Կապար, հզ. *տ* | 11 | 78,6[3] | 171 | 124,8 |
| Ավտոմոբիլներ մարդատար, հզ. հատ | 341 | 523 | 1722 | 1223 |
| Ավտոմոբիլներ բեռնատար, հզ. հատ | 104 | 261 | 455 | 383 |
| Տրակտորներ, հզ. հատ | 18[4] | 120 | 199 | 123[5] |
| Առևտրական նավեր (ջրարկված), հզ. բրուտտո ռեգիստրային *տ* | 1030 | 1325 | 1073 | 1135 |
| Հեռուստացույցներ, հզ. հատ | — | — | 1591 | 2066 |
| այդ թվում՝ գունավոր, հզ. հատ | — | — | — | 1378 |
| Ազոտական պարարտանյութեր, հզ. *տ* | 129 | 255 | 608 | 1118 |
| Ֆոսֆորական պարարտանյութեր (ըստ $P_2O_5$-ի պարունակության), հզ. *տ* | 432 | 1065 | 441 | 389 |
| Ծծմբական թթու, հզ. *տ* | 960 | 1832 | 3353 | 3454 |
| Պլաստմասսաներ և սինթետիկ խեժեր, հզ. *տ* | 295 | 295[6] | 958 | 3353 |
| Քիմիական մանրաթելեր, հզ. *տ* | 61 | 169 | 391 | — |
| Ցեմենտ, մլն *տ* | 7,8 | 9,9 | 17,2 | 15,9 |
| Բամբակե գործվածքներ, մլն *մ* | 3328 | 1941 | 927 | 378 |
| Բրդե գործվածքներ, մլն $մ^2$ | 396[7] | — | 252 | 144 |
| Կոշիկ (վաճառքի), մլն զույգ | — | — | — | 155 |
| Լրագրի թուղթ, հզ. *տ* | — | — | — | 319 |
| Թղթի այլ տեսակներ և ստվարաթուղթ, հզ. *տ* | — | — | — | 3879 |
| Կառուցված բնակարանների թիվը, հզ. | — | — | — | 288 |

[1]Առանց Հյուսիսային Իռլանդիայի: [2]1937: [3]1953: [4]1936: [5]1977: [6]1955: [7]1935:

թորզ», «Վոքսհոլ մոթորզ», «Ռութս մոթորզ»): Զարգացած է տրակտորաշինությունը:

Ավիացիոն արդյունաբերությունն ինքնաթիռների արտադրությամբ կապիտալիստական աշխարհում գրավում է 2-րդ տեղը (ԱՄՆ-ից հետո): Արտադրանքի շուրջ 2/3-ը արտահանվում է: Գործարանների մեծ մասը գտնվում է հվ-ում՝ Մեծ Լոնդոնի շուրջը, Բրիստոլում, ինչպես նաև Արևմտյան Միդլենդում և Լանքաշիրում: Մ. Բ. ավիաշինության բնագավառում ընդլայնում է համագործակցությունը արևմտա-եվրոպական այլ երկրների հետ (օրինակ, «Կոնկորդ» գերձայնային ռեակտիվ մարդատար ինքնաթիռի արտադրության բնագավառում՝ Ֆրանսիայի հետ): Տրանսպորտային մեքենաշինության ավանդական ճյուղերից է նավերի, լոկոմոտիվների, երկաթուղային սարքավորման արտադրությունը: Մ. Բ. նավերի արտադրությամբ երկար ժամանակ եղել է աշխարհի առաջատար երկիրը, բայց 1978-ին կապիտալիստական աշխարհում գրավում էր միայն 3-րդ տեղը (Ճապոնիայից և Շվեդիայից հետո):

Էլեկտրատեխ. արդյունաբերության մեջ աչքի է ընկնում էլեկտրագեներատորների, ԱԷԿ-ների համար սարքավորման արտադրությունը և հատկապես էլեկտրոնիկան, որի բուռն զարգացումը կապված է ռազմ. նշանակության ճյուղերի հետ: Ձեռնարկությունների մեծ մասը գտնվում է Մեծ Լոնդոնում, Արևմտյան Միդլենդում և Լանքաշիրում: Հաստոցաշինությունը տալիս է բարձրորակ արտադրանք, բայց լրիվ չի ապահովում նորագույն մասնագիտացված հաստոցների նկատմամբ սեփական պահանջմունքները:

Քիմ. արդյունաբերությունն առավելապես հենվում է նավթավերամշակման վրա. խիստ կրճատվել է կոքսաքիմ. հումքի դերը: Գործում են նավթավերամշակման 19 գործարաններ՝ 126 մլն *տ* (1979-ի սկիզբ) ընդհանուր կարողությամբ, Թեմզայի գետաբերանում, Ֆոլիում (Սաութհեմփթոնի մոտ), Հարավային Ուելսում, Մերսիսայդում, Տիսպորտում, Գրեյնջմութում և այլուր: Քիմ. արդյունաբերությունը թողարկում է սինթետիկ մանրաթելեր, պլաստմասսաներ, հերբիցիդներ, անիլինային ներկեր, ծծմբական թթու, հանքային պարարտանյութեր, դեղամիջոցներ, պայթուցիկ նյութեր ևն: Գլխավոր շրջաններն են Լանքաշիրը (Չեշիրի հետ), Հյուսիս-Արևելյան Անգլիան՝ Բիլինգհեմ-Ուիլթոն կոմպլեքսով, Հարավային Ուելսը և Սնեռնսայդը, Ֆոլին, Թեմզայի գետաբերանը, Գրեյնջմութը (Շոտլանդիա):

Տեքստիլ արդյունաբերությունը, որն արտահանման հին ճյուղերից է, կորցրել է իր վաղեմի նշանակությունը: Հատկապես կրճատվել է բամբակեղենի արտադրությունը, որի հիմնական շրջանը Լանքաշիրն է (Մանչեստրի կոնուրբացիա), բրդեղենինը՝ Յորքշիրը (Լիդս, Բրադֆորդ): Այս և մի շարք այլ շրջաններում զարգանում է քիմ. մանրաթելերի գործվածքների արտադրությունը:

Սննդի արդյունաբերության ձեռնարկությունները տեղաբաշխված են ոչ միայն գյուղատնտ. հումքի արտադրության և սպառման շրջաններում, այլև նավահանգստային խոշոր քաղաքներում (Լոնդոն, Լիվերպուլ, Բրիստոլ, Բելֆաստ), որտեղ հիմնականում վերամշակվում է ներմուծվող հումքը:

**Գյուղատնտեսությունը**: Հողի հիմնական մասը պատկանում է խոշոր հողատերերին՝ լենդլորդերին, որոնք այն վարձակալության են տալիս ֆերմերներին: Ֆերմերների 1/2-ը մանր և միջակ սեփականատերեր են: Գյուղատնտ. հողի 2/3-ից ավելին (Շոտլանդիայում՝ 90%-ից ավելին) խոշոր ֆերմերների ձեռքին է, որոնց տնտեսություններից յուրաքանչյուրի չափերը հասնում են մոտ 100 *հա*-ի: Գյուղատնտեսության մեջ բոլոր զբաղվածների շուրջ 2/3-ը կազմում է գյուղատնտ. պրոլետարիատը:

Գյուղատնտեսության գլխավոր ճյուղը՝ անասնապահությունը, որին բաժին է ընկնում գյուղատնտ. համախառն արտադրանքի շուրջ 70%-ը, լավ է ապահովված կերային բազայով՝ բնական հանդակներով (19,2 մլն *հա* գյուղատնտ. հանդակներից 5 մլն *հա* կուլտուրականացված մարգագետիններ են, 7 մլն *հա*՝ կոշտ խոտածածկով արոտավայրեր), կերային կուլտուրաներով (ցանքատարածության 1/2-ը). խտացրած կերի զգալի մասը ներմուծվում է: Բուծում են կաթնատու և կաթնամսատու տավար (13,7 մլն գլուխ, 1978), ոչխար (29,6 մլն), խոզ (7,8 մլն) և թռչուն (122 մլն): 1978-ին արտադրվել է 2,0 մլն *տ* միս, 15,1 մլրդ *լ* կաթ, 160 հզ. *տ* կարագ, 14,1 մլրդ ձու, 46 հզ. *տ* բուրդ: Անասնապահական մասնագիտացումը բնորոշ է շրջանների մեծ մասին և հատկապես երկրի արմ. և կենտրոնական շրջաններին: Արլ-ում և, գլխավորապես, հվ-արլ-ում մեծ նշանակություն ունի դաշտավարությունը. հերկված է 6 մլն *հա* հող, այդ թվում 3,8 մլն *հա* զբաղեցնում են հացահատիկները: Ուոշ ծոցի մոտ, Սևեռն, Իվշեմ, Ուզ գետերի հովիտներում, ինչպես նաև կուրորտների շուրջը զարգացած է բանջարաբուծությունը, այգեգործությունը և ծաղկաբուծությունը: Ամենուրեք տարածված է կարտոֆիլագործությունը (հատկապես Շոտլանդիայում և Հյուսիսային Իռլանդիայում):

Մ. Բ. լրիվ բավարարում է իրեն կաթով, ձվով, կարտոֆիլով, մսով, հացահատիկով, շաքարով:

Ձկան որսը 1978-ին կազմել է շուրջ 1,0 մլն *տ*: Ձկնորսական առավել խոշոր նավատորմիղները գտնվում են Հյուսիսային ծովի ափին (Հալ, Գրեյթ, Գրիմսբի, Գրեյթ Յարմութ, Լոուստոֆթ, Աբերդին). արմ. ծովափին խոշորագույնը Ֆլիտվուդն է:

**Տրանսպորտը**: Մեծ է ծովային տրանսպորտի նշանակությունը, որին բաժին է ընկնում ընդհանուր բեռնաշրջանառության ավելի քան 93%-ը (*տ. կմ*-ով): Ծովային նավատորմի տոննաժը 1978-ին կազմել է 28,6 մլն բրուտտո ռեգիստրային *տ* (3359 նավ): Առավել խոշոր նավահանգիստներն են Լոնդոնը (բեռնաշրջանառությունը՝ 43 մլն *տ*, 1977), Սաութհեմփթոնը, Լիվերպուլը, Մանչեստրը, Գլազգոն, Հալը, Բրիստոլը, Նյուքասլը, Դուվրը: Երկաթուղիների երկարությունը 18,0 հզ. *կմ* է, բեռնաշրջանառությունը՝ 20,2 մլրդ *տ. կմ* (1978): Գլխավոր հանգույցը Լոնդոնն է (11 ճառագայթ): Ավտոճանապարհների ցանցը 335 հզ. *կմ* է (առանց Հյուսիսային Իռլանդիայի, 1977): Կա մարդատար 14,4 մլն և բեռնատար 1,7 մլն ավտոմոբիլ: Ներքին ջրային նավարկելի ուղիների թողունակությունը փոքր է. առավել կարևոր է Մանչեստրի ջրանցքը (57 *կմ*), որը Մանչեստր քաղաքը Մերսի գետի էստուարիայով միացնում է Իռլանդական ծովին: Զարգացած է ավիատրանսպորտը: Օդային հաղորդակցությունների գլխավոր հանգույցը Լոնդոնն է:

**Արտաքին առևտուրը**: 1978-ին արտահանումը (ներառյալ վերարտահանումը) կազմել է 37,4, ներմուծումը՝ 41,0 մլրդ ֆունտ ստեռլինգ: Մ. Բ. արտահանում է սարքավորում և մեքենաներ, բամբակե և բրդե գործվածքներ, քիմ. արտադրանք, ներմուծում է երկաթի հանքաքար, գունավոր և հազվագյուտ մետաղներ, նավթ, ֆոսֆորիտներ, բամբակ և հումքի այլ տեսակներ, պարեն, ինչպես նաև արդ. զանազան արտադրանք: Արտաքին առևտրում առաջատար տեղ են գրավում Եվրոպայի տնտ. համագործակցության երկրները, որոնց բաժինը արտահանման գծով կազմել է 37,7%, ներմուծման գծով՝ 40,3%, սոցիալիստական երկրներինը, համապատասխանաբար, 2,1% և 3,1%: Առանձին երկրներից Մ. Բ-ի առևտրական առավել խոշոր գործընկերներն են ԱՄՆ, ԳՖՀ, Ֆրանսիան, Իռլանդիան, Կանադան:

Մ. Բ. կապիտալի խոշոր արտահանող է. միայն ուղղակի ինվեստիցիաները 1978-ին կազմել են 3,3 մլրդ դոլլար:

Դրամական միավորը ֆունտ ստեռլինգն է:

**VIII. Զինված ուժերը**

Մ. Բ-ի զինված ուժերը (345,1 հզ. մարդ, 1976) կազմված են ցամաքային զորքերից (բանակից), ռազմաօդային և ռազմածովային ուժերից, ինչպես նաև տերիտորիալ

Գյուղատնտեսական հիմնական կուլտուրաների ցանքատարածությունը և համախառն բերքը

| Գյուղատնտ. հիմնական կուլտուրաները | Ցանքատարածությունը | | | Բերքը, հզ. *տ* | | |
|---|---|---|---|---|---|---|
| | 1948—1952[1] | 1965 | 1978 | 1948—1952[1] | 1965 | 1978 |
| Ցորեն | 881 | 1026 | 1263 | 2397 | 4171 | 6588 |
| Գարի | 818 | 2183 | 2360 | 2061 | 8191 | 10002 |
| Վարսակ | 1249 | 408 | 181 | 2852 | 1232 | 726 |
| Կարտոֆիլ | 496 | 300 | 212 | 9443 | 7578 | 7289 |
| Շաքարի ճակնդեղ | 168 | 183 | 210 | 4525 | 6813 | — |

[1] Մեկ տարվա միջինը:

ու պահեստային զորամասերից: Գերագույն գլխ. հրամանատարն է թագավորը (թագուհին), որի ղեկավարությունը ձևական է: Փաստորեն զինված ուժերի համար պատասխանատու են պրեմիեր մինիստրը և մինիստրների կաբինետը: Բարձրագույն ղեկավարությունն իրականացնում է պաշտպանության կոմիտեն (որի մեջ մտնում են պաշտպանության, ներքին գործերի, արտաքին գործերի, ֆինանսների, տեխնիկայի մինիստրները)՝ պրեմիեր մինիստրի գլխավորությամբ: Պաշտպանության մինիստրը զինված ուժերի անմիջական ղեկավարությունն իրականացնում է բանակի, ՌՕՈՒ-ի և ՌԾՈՒ-ի գծով տեղակալների և պաշտպանության շտաբի միջոցով: Խաղաղ պայմաններում զինված ուժերը սովորաբար համալրվում են զինվորագրված կամավորներով. սովորական պայմանագիրը կնքվում է 22 տարի, կարճատևը՝ 6 ամսից մինչև 12 տարի ժամկետով:

Ցամաքային զորքերը (174,9 հզ. մարդ, 1976) բաժանվում են կանոնավոր ու տերիտորիալ բանակների և պահեստների: Կանոնավոր բանակի միավորումներն ու զորամասերը տեղաբաշխված են Մ. Բ-ում, ԳՖՀ-ում (55,5 հզ. մարդ), Արևմտյան Բեռլինում (3 հզ. մարդ), Մերձավոր և Միջին Արևելքում, Մալայզիայում, Սինգապուրում, Այանհանում (Հոնկոնգ), Ջիբրալթարում և այլ շրջաններում: Բանակը զինված է անգլ. և ամեր. ռազմ. տեխնիկայով: Ռազմաօդային ուժերը կազմված են կանոնավոր ՌՕՈՒ-ից (շուրջ 500 մարտական ինքնաթիռ) և պահեստից (համապատասխանաբար, 94,1 հզ. և 31,6 հզ. մարդ): ՌՕՈՒ-ի գլխավոր հարվածող ուժն են կազմում (մետրոպոլիայում) ռմբակոծիչ, կործանիչ, հետախուզական ավիացիայի միավորումներն ու զորամասերը, պարեկային ինքնաթիռներն ու ուղղաթիռները: Ռազմածովային ուժերը (76,1 հզ. մարդ) կազմված են ռազմածովային նավատորմից (շուրջ 200 նավ), ՌԾՈՒ-ի ավիացիայից և ծովային հետևակից: Իր մարտական հնարավորություններով անգլ. նավատորմը 2-րդ տեղն է գրավում կապիտալիստական աշխարհում: Մ. Բ-ի զինված ուժերի և ՌԾՈՒ-ի հիմնական միջուկային հարվածող ուժը ատոմային հրթիռակիր սուզանավերն են, որոնցից յուրաքանչյուրը զինված է «Պոլարիս» Ա-3 տիպի 16 բալիստիկ հրթիռներով: Հիմնական բազաներն են մետրոպոլիայում՝ Ռոսայթ, Ֆասլեյն, Լոնդոնդերի, Պլիմուտ, Պորտսմուտ, Պորտլենդ, Չաթմ, Միջերկրական ծովում՝ Ջիբրալթար, Մալթա, Հնդկական օվկիանոսում՝ Բահրեյնյան և Մալդիվյան կղզիներ, Խաղաղ օվկիանոսում՝ Այանհան (Հոնկոնգ), Սինգապուր:

Մ. Բ. ՆԱՏՕ, ՍԵՆՏՕ և այլ ագրեսիվ ռազմ. խմբավորումների անդամ է:

**IX. Բժշկա-աշխարհագրական բնութագիրը**

1974-ին Անգլիայում և Ուելսում ծնունդը կազմել է 1000 բնակչին 13,0, մահացությունը՝ 11,9, մանկական մահացությունը 1000 ողջ ծնվածին՝ 16,3, Շոտլանդիայում, համապատասխանաբար՝ 13,4, 12,3, 18,9, Հյուսիսային Իռլանդիայում՝ 17,6, 11,3, 21,2: Մահացության հիմնական պատճառներն են (1971) արյան շրջանառության համակարգը և կենտրոնական նյարդային համակարգի անոթային հիվանդությունները, չարորակ նորագոյացությունները, շնչառական օրգանների հիվանդությունները (թոքաբորբ, բրոնխիտներ, բրոնխային հեղձուկ), դժբախտ պատահարները, գրիպը: Տարածված են նաև մարսողության համակարգի և զգայարանների հիվանդությունները, կարմրուկը, կապույտ հազը, քութեշը, սիֆիլիսը ևն: Անգլիայում և Ուելսում առողջապահության ընդհանուր ղեկավարությունն իրականացնում է առողջապահության և սոցիալական ապահովության մինիստրությունը, Շոտլանդիայում՝ առողջապահության դեպարտամենտը, Հյուսիսային Իռլանդիայում՝ առողջապահության և սոցիալական ծառայության մինիստրությունը: Հիվանդանոցային օգնությունը կազմակերպվում է ընդհանուր և մասնագիտացված հիվանդանոցներում, որոնք գործում են հիվանդանոցային խորհուրդների ղեկավարությամբ: 1971-ին Անգլիայում, Ուելսում և Շոտլանդիայում գործել է 1229 ընդհանուր հիվանդանոց (227 368 մահճակալ), վարակիչ հիվանդությունների (ներառյալ տուբերկուլոզային)՝ 92 (8213 մահճակալ), հոգեբուժական 417 (202 012 մահճակալ), մանկական 44 (5382 մահճակալ), այլ պրոֆիլի 768 (60 796 մահճակալ), 261 ծննդատուն (11 582 մահճակալ): Արտահիվանդանոցային օգնություն են կազմակերպում հիմնականում ընդհանուր պրակտիկայով զբաղվող բժիշկները: 1970-ին ընդհանուր առմամբ աշխատել է 65 հզ. բժիշկ (10 հզ. բնակչին՝ 12 բժիշկ), 16,9 հզ. դեղագործ, 180 հզ. բուժքույր, 1971-ին՝ մոտ 15 հզ. ատամնաբույժ: Բժիշկներ են պատրաստում բժշկ. 33 դպրոց (համալսարանների բժշկ. ֆակուլտետներ և ինքնուրույն հաստատություններ), ատամնաբույժներ՝ ատամնաբուժական 22 դպրոց: 1971—72-ին առողջապահության համար պետ. բյուջեի ծախսերը կազմել են ազգային եկամտի 5%-ը: Մ. Բ-ի առողջարաններից հռչակված են Բրայթոնը, Բոռնմութը, Իսթբոռնը, Բոգնոր Ռիջիսը, Բաթը, Բաքսթոնը:

1975-ին ՍՍՀՄ-ի և Մ. Բ-ի միջև կնքվել է միջկառավարական համաձայնագիրը առողջապահության և բժշկագիտության բնագավառում համագործակցելու վերաբերյալ:

**X. Լուսավորությունը**

Մ. Բ-ում դպրոցական պետ. համակարգը սկզբնադրվել է 1870-ի՝ 5—12 տարեկանների տարրական պարտադիր կրթության մասին օրենքով: Ժողկրթության ժամանակակից համակարգը կազմված է 3 աստիճանից՝ տարրական, միջնակարգ և, այսպես կոչված, հետագա կրթության: Տարրական դպրոցների (5—11 տարեկաններ) շրջանավարտները թեստային հատուկ փորձարկման արդյունքներով ընդունվում են ոչ համարժեք երեք տիպի միջնակարգ դպրոցներ՝ քերականական (ուսման տևողությունը՝ 5—7 տարի), ժամանակակից (ուսման տևողությունը՝ 4—5 տարի), տեխ. (ուսման տևողությունը՝ 5, երբեմն՝ 7 տարի): Քերականական դպրոցը (հումանիտար և բնամաթ. բաժանմունքներով) նախապատրաստում է բուհ ընդունվելու, ժամանակակից դպրոցում մեծ ուշադրություն է հատկացվում գործնական պատրաստմանը, իսկ տեխ. դպրոցը զուգակցում է հանրակրթական և ընդհանուր տեխ. պատրաստությունը: 1950-ական թթ. սկզբից ստեղծվում է միջնակարգ դպրոցի, այսպես կոչված, միասնական տիպ, որը միավորում է բոլոր 3 տիպի միջնակարգ դպրոցների ծրագրերը (ուսման տևողությունը՝ 4,5 և 7 տարի): Դպրոցների մոտ կեսը երկսեռ է: Բացի պետականից, գործում են նաև մասնավոր («անկախ») միջնակարգ դպրոցներ: Այսպես կոչված՝ հետագա կրթության աստիճանի մեջ մտնում են հանրակրթական և պրոֆեսիոնալ ուս. հաստատությունները՝ լրիվ և ոչ լրիվ ուս. օրով, ինչպես նաև տարբեր դասընթացներ՝ գլխավորապես աշխատող երիտասարդների համար:

Բարձրագույն կրթություն են ստանում համալսարաններում, կոլեջներում և տեխ. ինստ-ներում: Խոշորագույն համալսարաններն են՝ Լոնդոնի (հիմնադրվել է 1836-ին), *Քեմբրիջի համալսարանը*, *Օքսֆորդի համալսարանը*, Էդինբուրգի (1583), Ուելսի (1893, Կարդիֆ), Բելֆաստի (1908): Ետպատերազմյան շրջանում հիմնադրվել են Նոթինգհեմի, Էսեքսի և այլ համալսարաններ:

Խոշորագույն գրադարաններն են՝ Բրիտանական թանգարանի (հիմնադրվել է 1753-ին, Լոնդոն), Օքսֆորդի (Բոդլիի գրադարան, 1602, ավելի քան 2,8 մլն գիրք) և Քեմբրիջի (շուրջ 3 մլն գիրք, ավելի քան 2 հզ. ձեռագիր) համալսարանների, Ուելսի ազգային (1907, Կարդիֆ, ավելի քան 2 մլն գիրք), Լանքաշիրի հանրային (1224, 3,3 մլն գիրք), Շոտլանդիայի ազգային (1682, Էդինբուրգ, ավելի քան 3 մլն գիրք), Էդինբուրգի (ավելի քան 1 մլն գիրք) և Լոնդոնի (1838, ավելի քան 350 հզ. գիրք) համալսարանների ևն:

Գլխավոր թանգարաններն են՝ *Բրիտանական թանգարանը*, Բրիտանական բնապատմական, Գիտական (հիմնադրվել է 1857-ին), Լոնդոնի (1912), Ազգային պատկերասրահը (1824), Վիկտորիայի և Ալբերտի (1852), Թեյտի պատկերասրահը (1897) ևն (բոլորն էլ՝ Լոնդոնում), Ուելսի Ազգային (1907, Կարդիֆում), Շեքսպիրի հուշաթանգարանը (Ստրատֆորդ օն Այվոն քաղաք), Շոտլանդիայի թագավորական (1854), Շոտլանդիայի ազգային պատկերասրահը (1859, երկուսն էլ՝ Էդինբուրգում):

**XI. Գիտությունը և գիտական հիմնարկները**

**1. Բնական և տեխնիկական գիտությունները**

Վաղ միջնադարում Անգլիայում, ինչպես և Եվրոպայի մյուս երկրներում, գիտելիքների նախնական կուտակումը պայմանավորված է եղել արհեստների զարգացմամբ: Աշխարհի մասին ընդհանուր պատկերացումները ձևավորվել են եկեղեցական հայացքների շրջանակներում: XII—XIII դդ. ստեղծվել են Օքսֆորդի և Քեմբրիջի համալսարանները. դրանք սկզբում եղել են եկեղեցական ուսումնական հաստատություններ, ուր իշխում էր սխոլաստիկան: XIII դ. սխոլաստիկայից

հրաժարվելուն նպաստել են փիլիսոփա և ալքիմիկոս, եվրոպական փորձարարական գիտության հիմնադիր Ռոջեր Բեկոնի աշխատությունները: XV—XVI դդ. գիտական առաջընթացի համար կարևոր խթան է եղել Անգլիայի մասնակցությունը *Աշխարհագրական մեծ հայտնագործություններին* (Ջ. և Ս. Կաբոտներ, Ֆ. Դրեյկ, Հ. Հուդզոն, Ու. Բաֆին և ուրիշներ), ինչպես նաև հանքարդյունաբերության, մետալուրգիայի և մանուֆակտուրային արտադրության զարգացումը: Ծովագնացությունն իր հերթին խթանել է աստղագիտության և մաթեմատիկայի զարգացումը: Անգլիացի մաթեմատիկոս Ջ. Նեպերին է պատկանում լոգարիթմների գյուտը: 1600-ին Ու. Գիլբերտն առաջինն է ցույց տվել, որ Երկիրը մի մեծ մագնիս է:

XVII դ. գիտական հետազոտությունների կենտրոնը Իտալիայից, ապա և Ֆրանսիայից ու Հոլանդիայից աստիճանաբար տեղափոխվում է Մ. Բ., որը թևակոխել էր զարգացման կապիտալիստական ուղին և դարձել ծովային հզոր պետություն: 1662-ին կազմակերպվել է Լոնդոնի թագավորական ընկերությունը, որը մշակել է գիտական ու գործնական մեծ նշանակություն ունեցող հետազոտությունների լայն ծրագիր: 1675-ին ստեղծվել է Գրինվիչի աստղադիտարանը: Բնագիտության մեթոդոլոգիան ձևակերպել է Ֆ. Բեկոնը, որի գաղափարների ազդեցությունը խիստ զգալի է եղել անգլ. գիտության զարգացման վրա: XVII դ. 2-րդ կեսին գիտնականները մշակել են մեխանիկայի, օպտիկայի, քիմիայի, ֆիզիոլոգիայի հիմունքները: Այդ շրջանի գիտական խոշոր հայտնագործությունները կապված են Ռ. Բոյլի, Ռ. Հուկի, Ու. Հարվեյի, Ի. Նյուտոնի անունների հետ: XVII դ. անգլ. գիտության հաղթանակը իրավամբ կարելի է համարել տեսական մեխանիկայի և, մասնավորապես, երկնային մեխանիկայի հիմունքների ստեղծումը: Դինամիկայի հիմնական օրենքների ձևակերպումը և տիեզերական ձգողության օրենքի հայտնագործումն անմահացրին Ի. Նյուտոնի անունը: Նա, Լայբնիցից անկախ, հայտնագործել է նաև դիֆերենցիալ և ինտեգրալ հաշիվները: XVIII—XIX դդ. Մ. Բ. հայտնի էր որպես «մեքենաների հայրենիք»: Այդ ժամանակաշրջանում են ստեղծվել ջուլհակահաստոցը (Է. Քաթրայթ), ունիվերսալ շոգեմեքենան (Ջ. Ուատտ), շոգեքարշը (Ռ. Տրետիվիկ) և առաջին շոգեքարշային երկաթուղին (Ջ. Ստեֆենսոն): XVIII դ. Մ. Բ-ում քիմիայի բնագավառի ներկայացուցիչներն էին Եվրոպայի խոշորագույն գիտնականներ Ջ. Բլեկը, Հ. Կավենդիշը, Ջ. Պրիստլին: Նրանք կարևոր ավանդ են ներդրել օդի բաղադրության, այրման պրոցեսի ուսումնասիրման գործում: Ջ. Դալթոնը շարադրել է ատոմային տեսության սկզբունքները, որոնց հիման վրա 1802—08-ին հայտնագործել է բազմապատիկ հարաբերությունների օրենքը: XVIII դ. շարունակվել է աշխարհագրական (նշանակալի էին Ջ. Կուկի շուրջերկրյա երեք ճանապարհորդության արդյունքները), կենսաբանական և երկրաբանական գիտելիքների կուտակման պրոցեսը: Զգալի են եղել հաջողությունները աստղագիտության բնագավառում: Ջ. Բրադլեյը հայտնաբերել է լույսի աբեռացիան, Վ. Հերշելը կառուցել է հզոր հեռադիտակներ, հայտնագործել Ուրան մոլորակը, ինչպես նաև Ուրանի ու Սատուռնի արբանյակները:

XIX դ. 30-ական թթ. սկսած, գյուղատնտեսության և արդյունաբերության արագ զարգացման շնորհիվ, Մ. Բ-ի գիտությունը առաջատար տեղ է գրավել աշխարհում: Մեքենաշինության աճը պայմանավորել է մետալուրգիայի և մետաղամշակման զարգացումը, իսկ երկրի ներսում արդ. նոր շրջանների երևան գալը խթանել է տրանսպորտի ու կապի կատարելագործումը: 1866-ին շարք է մտել Մ. Բ-ի և ԱՄՆ-ի միջև անդրատլանտյան ստորջրյա հեռախոսագիծը: 1881-ին կառուցվել է առաջին էլեկտրակայանը, ավելի ուշ շահագործման է հանձնվել առաջին էլեկտրիֆիկացված երկաթուղին: XIX դ. անգլիացի նշանավոր ֆիզիկոսներ Ջ. Ջոուլը, Ու. Թոմսոնը, Ջ. Մաքսվելը, Թ. Յունգը, Դ. Բրյուստերը, Ջ. Ստոքսը, Ջ. Ռելեյը և ուրիշներ կարևոր դեր են կատարել ֆիզիկայի բոլոր բնագավառների արմատական վերակառուցման և, առհասարակ, այդ գիտության զարգացման գործում: Այդ ժամանակաշրջանի խոշորագույն նվաճումներից էր էլեկտրամագնիսական դաշտի և դրա հիմնական օրենքների հայտնագործումը (Մ. Ֆարադեյ, Ջ. Մաքսվել): Մաքսվելի տեսությունը հանգեցրել է լույսի էլեկտրամագնիսական բնույթի բացահայտմանը: Մաթեմատիկայի զարգացումը սերտորեն կապված էր տեսական ֆիզիկայի պրոբլեմների հետ: Արժեքավոր ուսումնասիրություններ են կատարել Համիլտոնը (կոմպլեքս թվերի հանրահաշիվ), Ջ. Բուլը (մաթ. տրամաբանություն), Չ. Բեբիջը (մշակել է մաթ. հաշվողական մեքենայի գաղափարը): Աստղագետ Ջ. Ադամսը կանխահաշվել է Նեպտուն մոլորակի դիրքը: Անգլիացի քիմիկոսների աշխատանքները նպաստել են քիմ. միացությունների կազմության վերաբերյալ պատկերացումների ձևավորմանը: Է. Ֆրանկլենդը մուծել է արժեքականության հասկացությունը: XIX դ. վերջին Ու. Ռամզայը Մ. Տրավերսի հետ համատեղ հայտնագործել է իներտ գազերը: Երկրի մասին գիտությունների զարգացման գործում մեծ դեր են կատարել անգլ. արշավախմբերը (Ու. Պարի, Ջ. Ռոս, Ջ. Կ. Ռոս, Դ. Լիվինգստոն և ուրիշներ): Նշանակալի հաջողությունների են հասել երկրաբանությունն ու երկրաֆիզիկան (Չ. Լայել, Ա. Ուոլես, Ջ. Էրի, Ջ. Պրատ և այլք): Գյուղատնտեսության ինտենսիվացումը և անասնաբուծության աճը Մ. Բ-ում մեծ նշանակություն են ունեցել կենսաբանության զարգացման համար: XIX դ. անգլ. և համաշխարհային գիտության աննախադեպ նվաճումներից է Չ. Դարվինի էվոլյուցիոն ուսմունքը: Բժշկագիտության համար բացառիկ նշանակություն են ունեցել Չ. Շերինգտոնի (նոբելյան մրցանակ, 1932) աշխատանքները՝ ողնուղեղի ռեֆլեքսային գործունեության ուսումնասիրման ուղղությամբ:

Մինչև XX դ. 40-ական թթ. անգլ. գիտությունը պահպանել է իր առաջատար դերը մի շարք բնագավառներում, հատկապես ֆիզիկայում: XIX դ. վերջին համաշխարհային ճանաչում է ձեռք բերում Կավենդիշի լաբորատորիան (Քեմբրիջ), որը հաջորդաբար գլխավորել են Մաքսվելը, Ռելեյը և Ջ. Թոմսոնը: Թոմսոնի ղեկավարությամբ (1884—1919) այն դարձել էր փորձառական հմտության դպրոց, որը XX դ. առաջին տասնամյակներին մեծ ազդեցություն է գործել շատ երկրների ֆիզիկոսների վրա: Դեռևս 1-ին համաշխարհային պատերազմից առաջ Չ. Բարկլան հայտնագործել է բնութագրական ռենտգենյան ճառագայթները (նոբելյան մրցանակ, 1917), Ռեզերֆորդն իր աշակերտների հետ մշակել է ատոմի մոլորակային մոդելը: Թոմսոնի և Ֆ. Աստոնի ստեղծած մասսպեկտրաչափը հնարավորություն է տվել հայտնաբերելու քիմ. տարրերի իզոտոպներն ու իրագործելու դրանց բաժանումը (նոբելյան մրցանակ, 1921): Ռեզերֆորդի աշխատանքների արդյունքն են եղել ռադիոակտիվ տրոհման տեսության ստեղծումը (Ֆ. Սոդիի հետ համատեղ), ատոմի միջուկի հայտնագործումը և միջուկների արհեստական ճեղքման առաջին փորձերը: 1932-ին Ջ. Կոկրոֆտը և Է. Ուոլտոնը Կավենդիշի լաբորատորիայում ստեղծել են տարրական մասնիկների արագացուցիչ և իրագործել միջուկների ճեղքումը պրոտոններով: XX դ. գիտության նոր ուղղության՝ տիեզերական ճառագայթների ֆիզիկայի զարգացման գործում կարևոր ավանդ են ներդրել Պ. Բլեկետը (նոբելյան մրցանակ, 1948), Ս. Պաուելը և Օկիալինին (նոբելյան մրցանակ, 1950), Գ. Ռոչեստերը, Գ. Բատլերը և ուրիշներ: Արժեքավոր հետազոտություններ են կատարվել նաև տեսական ֆիզիկայի ասպարեզում (Պ. Դիրակ, Ռ. Փայերլս, Ն. Մոտտ, Ա. Վիլսոն և ուրիշներ):

Մ. Բ-ում մաթեմատիկան զարգանում է հիմնականում հետևյալ ուղղություններով՝ մաթ. տրամաբանություն (Բ. Ռասել, Ա. Ուայթհեդ), թվերի տեսություն և ֆունկցիաների տեսություն (Գ. Հարդի, Ջ. Լիթլվուդ), մաթ. վիճակագրություն (Ռ. Ֆիշեր), հաշվողական մաթեմատիկա:

Ֆիզիկական քիմիայի և քիմ. ֆիզիկայի բնագավառում հայտնի են Ս. Հինշելվուդի աշխատանքները, որը շղթայական քիմ. ռեակցիաների տեսության ստեղծման համար 1956-ին Ն. Ն. Սեմյոնովի (ՍՍՀՄ) հետ արժանացել է նոբելյան մրցանակի: Գիտության հիմնարար ուղղությունների հետ մեկտեղ զարգացել են նաև կիրառական և տեխ. գիտությունները, հատկապես էլեկտրոնիկան և ռադիոֆիզիկան: 1925—28-ին Ջ. Բերդը զբաղվել է սև-սպիտակ և գունավոր հեռուստատեսության պրոբլեմով, իրականացրել հեռուստահաղորդման փորձեր: 1941-ին առաջին թռիչքն է կատարվել տուրբառեակտիվ շարժիչ ունեցող փորձնական ինքնաթիռով: Ետպատերազմյան տարիներին գիտական հեղափոխությունը վերածվում է գիտատեխ. հեղափոխության: Մ. Բ-ում արագորեն աճում է ռազմ. արդյունաբերության հետ կապված հետազոտությունների տեսակարար կշիռը:

Համաշխարհային ճանաչման է արժանացել կենսաքիմիայի անգլ. դպրոցը, որի մի շարք ներկայացուցիչներ (Ֆ. Հոպկինս,

Ա. Գարդեն, Հ. Կրեբս, Ա. Մարտին, Ռ. Սինգ և ուրիշներ) իրենց արժեքավոր հետազոտությունների ու կարևոր հայտնագործությունների համար արժանացել են նոբելյան մրցանակի: Բժշկության համար մեծ նշանակություն ունեցող երևույթ է եղել պենիցիլինի հայտնագործումը (Ա. Ֆլեմինգ, նոբելյան մրցանակ, 1945): 1962-ին նոբելյան մրցանակով են նշվել նաև Ֆ. Քրիքի և Մ. Ուիլքինսի աշխատանքները (ԴՆԹ-ի կառուցվածքային մոդելի ստեղծումը):

Մ. Բ-ի գիտնականները զգալի ավանդ են ներդրել նաև գենետիկայի (Ու. Բեյթսոն, Ջ. Հոլդեյն, Ջ. Բեռնալ), նեյրոֆիզիոլոգիայի (Է. Էդրիան), մոլեկուլային կենսաբանության, մանրէաբանության, բուսաբանության, անասնաբուծության, Երկրի մասին գիտությունների զարգացման գործում:

**2. Հասարակական գիտությունները**

**Փիլիսոփայությունը**: Փիլիսոփայությունը Մ. Բ-ում, արտահայտելով ազգային ինքնատիպությունը, միաժամանակ զարգացել է եվրոպական այլ երկրների փիլ. մտքի հետ սերտ փոխազդեցությամբ, ակտիվորեն մասնակցել փիլ. գաղափարների ձևավորմանը: Անգլ. փիլիսոփայությանը բնորոշ է կողմնորոշումը դեպի էմպիրիկ գիտելիքը [նոմինալիզմ (տես *Նոմինալիզմ և ռեալիզմ*), *էմպիրիզմ*], դեպի արտաքին զգայական փորձը (*սենսուալիզմ*): Առաջին փիլիսոփան էր Ալկուինը (մոտ 735—804)՝ Օգոստինոսի աստվածաբանական ավանդույթների կողմնակիցը: Փիլ. առաջին համակարգը մշակել է (IX դ.) իռլանդացի Ցոհան Սկոտը Էրիուգենան, որի հայացքները՝ նպաստեցին հակասխոլաստիկական միտումների զարգացմանը: Ի տարբերություն նրա, Անսելմ Քենտրբերացին (XI—XII դդ.) հավատը համարում էր ռացիոնալ գիտելիքի նախադրյալ: Միջնադարի անգլ. սխոլաստներից էր նաև Ցոհան Սոլսբերացին՝ այդ շրջանում փիլիսոփայության պատմության առաջին ակնարկի հեղինակը, որի հայացքներում առկա են փորձի և գիտափորձի ըմբռնման առաջին սաղմերը: Նշանակալի է Ռ. Բեկոնի ներդրումը, որը առաջին պլան մղեց փորձնական գիտելիքը, գիտափորձը և մաթեմատիկան: Սխոլաստիկայի ծաղկման շրջանի հայտնի դեմքերից են Դունս Սկոտը և Ուիլյամ Օկամը: Ֆեոդալիզմի քայքայման և կապիտալի նախնական կուտակման շրջանի հասարակական մտքի պատմության մեջ առանձնահատուկ տեղ են գրավում Թ. Մորի ուտոպիական սոցիալիստական հայացքները:

Ֆեոդալիզմից կապիտալիզմին անցմանը ուղեկցեց անգլ. փիլիսոփայության կտրուկ շրջադարձը: XVII դ. Ֆ. Բեկոնը սկզբնավորեց հստակ մատերիալիստական ավանդույթը: Ի տարբերություն սխոլաստիկայի և աստվածաբանության, հռչակեց գիտության նշանակությունը: Այդ ավանդույթները շարունակեցին Թ. Հոբսը, Ջ. Լոկը: XVII դ. անգլ. մատերիալիզմի հակակղերական միտումները զարգացրեց XVIII դ. *դեիզմը*: Է. Չերբերին դրեց սխոլաստիկային տրամագծորեն հակառակ խնդիր՝ բանականությունը դարձնել հավատի չափանիշ: Գ. Ս-Ջ. Բոլինգբրոկը, Ա. Քոլինզը, Մ. Թինդալը և հատկապես բացահայտ մատերիալիստներ Ջ. Թոլանդը, Դ. Հարթլին և Ջ. Պրիստլին խորացրեցին այդ միտումը: Իդեալիստական միտումները պարզորոշ արտահայտվեցին Ջ. Բերկլիի սուբյեկտիվ-իդեալիստական փիլիսոփայության մեջ և Դ. Հյումի սկեպտիցիզմում: Հակամատերիալիստական միտումներ են ունեցել նաև միստիցիզմով ներծծված քեմբրիջյան պլատոնիկների դպրոցը և *շոտլանդական դպրոցը*: XIX դ. սկզբին ձևավորվում է Ռ. Օուենի ուտոպիական սոցիալիզմը:

Կապիտալիզմի հաստատման և բուռն զարգացման շրջանում ձևավորվում է *պոզիտիվիզմը*: Շնորհիվ Ջ. Ս. Միլի ինդուկտիվ տրամաբանության և Հ. Սպենսերի ձևակերպած էվոլյուցիոն սկզբունքի պոզիտիվիզմը որոշակի ներդրում ունեցավ գիտության մեթոդաբանության մեջ: Էվոլյուցիոն սկզբունքի պոզիտիվիստական մեկնաբանությանը հակադրվում է Թ. Հեքսլիի մատերիալիստական մեկնաբանությունը: Ազգային փիլ. ավանդույթներից յուրօրինակ շեղում էր XIX—XX դդ. սահմանագծին տարածված նեոհեգելյականությունը: XX դ. սկզբին իդեալիստական փիլիսոփայության անգլ. ավանդույթներին վերադարձ նշանավորեց *նեոռեալիզմը* (Բ. Ռասել, Ջ. Մուր, Չ. Դ. Բրոուդ, Ս. Ալեքսանդեր, Գ. Հ. Պրայս, Ա. Ն. Ուայթհեդ): XX դ. կեսին որոշիչ ազդեցություն ձեռք բերեց *նեոպոզիտիվիզմը*, մասնավորապես՝ տրամաբանական պոզիտիվիզմը (Ռասել, Լ. Վիտգենշտեյն, Ա. Այեր, Կ. Պոպեր), որը նշանակալի ավանդ մուծեց մաթ. տրամաբանության մեջ: 1950-ական թթ. տրամաբանական վերլուծության փիլիսոփայությունն իր առաջատար տեղը զիջեց լեզվաբանական վերլուծության փիլիսոփայությանը (Ջ. Ռայլ, Ջ. Օստին, Ջ. Ուրմսոն, Ջ. Էրմսոն): Անտեսելով փիլիսոփայության հիմնական ավանդական պրոբլեմները, այդ հոսանքի ներկայացուցիչները սահմանափակվեցին առօրյա լեզվի մանրակրկիտ ուսումնասիրությամբ: 1960-ական թթ. այդ ուղղությունը քննադատեցին ոչ միայն մարքսիստ փիլիսոփաները և նրան հակադրվող այլ ուղղությունների ներկայացուցիչներ (նաև Ռասելը), այլև իրենց՝ լեզվաբանական անալիտիկները (Պ. Ստրոուսոն, Ս. Հեմփշիր):

Մ. Բ-ում է հիմնականում անցել Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ստեղծագործական գործունեությունը, որոնք մի շարք երկերում վերլուծել են Մ. Բ-ում փիլիսոփայության զարգացումը և նրա առանձնահատկությունները: Էնգելսի «Բանվոր դասակարգի դրությունը Անգլիայում» (1845) աշխատությունը առաջին լուրջ սոցիոլոգիական ուսումնասիրություններից էր: Անգլիայում մարքսիզմի առաջին պրոպագանդիստներից են եղել Մարքսի դուստր Էլեոնորան և նրա ամուսինը՝ Է. Էվելինգը: Արդի առավել հայտնի անգլ. մարքսիստ փիլիսոփաներից են Մ. Քորնֆորտը և Ջ. Լյուիսը: Սակայն մարքսիստական դիալեկտիկական մատերիալիզմը, Մ. Բ-ում բանվորական շարժման զարգացման յուրահատկությունների պատճառով, անգլ. փիլիսոփայության մեջ դեռևս մեծ ազդեցություն չունի:

Փիլ. ուսումնասիրությունների և կրթության գլխավոր կենտրոններն են՝ Թագավորական փիլ. ինստ-ը, Օքսֆորդի, Քեմբրիջի, Լոնդոնի համալսարանները: Փիլ. հիմնական ընկերություններն են՝ Արիստոտելյան ընկերությունը, Մայնդը, Քեմբրիջի, Օքսֆորդի փիլ. ընկերությունները: Փիլ. առաջատար ամսագրերն են՝ «Մայնդ» («Mind», 1876-ից), «Ֆիլոսոֆի» («Philosophy», 1926-ից):

**Պատմագիտությունը**: Անգլ. պատմագիտությունը սկզբնավորվել է վաղ միջնադարում: Առաջին նշանավոր աշխատությունը, որն ազդել է Անգլիայի միջնադարյան հետագա պատմագիտության վրա, ստեղծել է (մոտ 731-ին) անգլո-սաքսոնական վանական Բեդա Պատվարժանը: IX դ. վերջին Ալֆրեդ Մեծ թագավորի օրոք (ինչպես գտնում են) սկսվել է «Անգլո-սաքսոնական ժամանակագրության» կազմումը: Ամբողջ միջնադարի ընթացքում պատմագրության կենտրոնները եղել են վանքերը: Քաղաքների զարգացման հետ XV դ. առաջացել են, այսպես կոչված, քաղաքային ժամանակագրությունները (առավել հայտնի է Ֆաբիանի ժամանակագրությունը): XVI դ. անգլ. պատմագրության մեջ երևացել են հումանիզմի գաղափարներ: Կապիտալիստական հարաբերությունների առաջացմամբ, որն ընթանում էր սոցիալական սուր բախումներով, անգլ. պատմագիտությունն ստանում է քաղ. բնույթ: Ֆեոդալա-կղերական աշխարհայեցողության հետ խզմամբ ըսկըսվել է պատմության աստիճանական վերաճումը գիտության: Պոլիդոր Վերգիլիոսի և Ու. Քեմդենի աշխատություններում ի հայտ են գալիս պատմական աղբյուրների գիտական քննադատության տարրեր: Ֆ. Բեկոնը առաջիններից է Անգլիայում, որ փորձել է հիմնավորել պատմության տեղը գիտության մյուս բնագավառների կողքին: Պատմագիտության զարգացման վրա մեծ ազդեցություն է գործել XVII դ. Անգլիական բուրժ. հեղափոխությունը: XVII դ. 2-րդ կեսի պատմական աշխատություններում իրենց արտահայտությունն են գտել հեղափոխության հիմնական հակադիր ուժերի հայացքները: XVIII դ. անգլ. պատմագիտությունը հիմնականում զարգացել է Լուսավորականության գաղափարների հիման վրա: Լուսավորիչ պատմաբանները (մասնավորապես Դ. Հյումը) միջին դարերը դիտել են որպես տգիտության և քաղ. քաոսի դարաշրջան: Լուսավորականության շրջանի խոշոր պատմաբանը Է. Գիբոնն էր (Հռոմ. կայսրության անկման ու կործանման պատճառների մասին աշխատության հեղինակ): Անգլ., ինչպես նաև եվրոպական պատմագիտության մեջ խոշոր ավանդ ունեն շոտլանդական պատմաբաններ Ու. Ռոբերտսոնը և Ջ. Միլարը:

XIX դ. 1-ին կեսին անգլ. պատմագիտության վրա ներգործել են Անգլիայում արդ. հեղաշրջման ավարտը, բուրժուազիայի՝ իշխանության համար պայքարը, ինչպես նաև Ֆրանս. մեծ հեղափոխությունն ու անգլ. պրոլետարիատի առաջին զանգվածային շարժումը՝ չարտիզմը: Պատմագի-

տության մեջ ձևավորվել են երկու ուղղություններ՝ պահպանողական (տորիների) և լիբերալ (վիգերի): Տորի պատմաբանները (Ա. Ալիսոն, Ու. Միթֆորդ) ձգտել են ապացուցել քաղ. ռեֆորմների կործանարար բնույթը, իսկ վիգերը (Ջ. Ռասել, Ջ. Քեմբլ և ուրիշներ), որոնք նույնպես երկնչում էին ժող. հեղափոխությունից, փորձել են հիմնավորել չափավոր ռեֆորմների անհրաժեշտությունը: XIX դ. 20—40-ական թթ. տիրող կարգերի քննադատությամբ հանդես են եկել մանրբուրժ. ռադիկալ-դեմոկրատական ուղղության պատմաբանները (Ու. Քոբետ և Թ. Կարլեյլ): Ուտոպիստ-սոցիալիստ Ռ. Օուենի և չարտիստների աշխատություններում առաջին անգամ ի հայտ եկան պրոլետարիատի հայացքները: XIX դ. 2-րդ կեսին արդ. կապիտալիզմի զարգացման հետ անգլ. բուրժ. պատմագրության մեթոդաբանական հիմքն է դառնում պոզիտիվիզմը (Հ. Սպենսեր և ուրիշներ): Հասարակության էվոլյուցիոն զարգացման պոզիտիվիստական գաղափարն ունեցել է դրական նշանակություն: Նկատելի էր առաջընթացը արխիվային փաստաթղթերի պահպանման ու հրատարակման գործում (դեռևս 1838-ին հիմնվել էր Լոնդոնի հանրային արխիվը): 1886-ից սկսում է հրատարակվել պատմական առաջին պարբերականը՝ «English Historical Review»: XIX դ. վերջի նշանավոր պատմաբաններն էին Ու. Սթեբսը, Է. Ֆրիմենը, Ֆ. Մեյթլենդը, Ջ. Է. Աքթոնը, Ջ. Ռ. Գրինը, Հ. Թ. Բոքլը, Ու. Լեկկին, Ս. Գարդիները: Թ. Ռոջերսի (Մ. Բ-ի XIII—XVIII դդ. տնտ. պատմության վերաբերյալ առաջին հիմնավոր աշխատության հեղինակ) անվան հետ է կապված նոր պատմատնտ. ուղղության առաջացումը (Ֆ. Սիբոմ, Ու. Էշլի, Ա. Թոյնբի և ուրիշներ): Բազմաթիվ աշխատություններ են գրվել Մ. Բ-ի արտաքին և գաղութատիրական քաղաքականության, ինչպես նաև Արևելքի երկրների պատմության վերաբերյալ: Փորձեր են արվել ուսումնասիրելու անգլ. բանվորական շարժումը: Հնագիտության հաջողությունները նպաստել են ավելի խոր ուսումնասիրելու Կենտրոնական Ասիայի, Մերձավոր ու Միջին Արևելքի, Հունաստանի, Եգիպտոսի հնագույն մշակույթների պատմությունը: XIX դ. վերջին —XX դ. սկզբին անգլ. պատմագիտության մեջ սկսել է ձևավորվել մարքսիստական ուղղությունը (Է. Բ. Բաքս, Ջ. Կոննոլի և ուրիշներ), որը զարգացրեց պատմական պրոցեսի գիտական աշխարհայացք:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, անգլ. բուրժ. պատմագրության տարբեր ուղղություններ միավորվելով մեկ միասնական ուղղության մեջ (պահպանելով որոշ երանգներ), հանդես են գալիս մարքսիզմի դեմ՝ պատմության գլխավոր խնդիրներում (անգլ. գյուղացիության պատմություն, XVII դ. բուրժ. հեղափոխություն. արդ. հեղաշրջումը և նրա սոցիալական հետևանքները, XIX—XX դդ. բանվորական շարժում, արտաքին և գաղութատիրական քաղաքականություն, ՍՍՀՄ պատմություն ևն): Բուրժ. պատմագրությանն են հարում լեյբորիստ պատմաբանները, որոնք հիմնականում զբաղվում են անգլ. բանվորական շարժման ուսումնասիրությամբ: Միևնույն ժամանակ աճում է մարքս-լենինյան պատմագրության ազդեցությունը. մարքսիստական ուսումնասիրությունների թեմատիկան ընդգրկում է ազգային և, մասամբ, ընդհանուր պատմության կարևորագույն հարցերը (Ա. Մորտոն, Է. Ռոտշտեյն, Վ. Չայլդ, Մ. Դոբ, Ռ. Առնոթ և ուրիշներ):

Մ. Բ-ում պատմության ուսումնասիրման կարևոր կենտրոններն են Օքսֆորդի, Քեմբրիջի, Լոնդոնի համալսարանները: Գործում են բազմաթիվ պատմական ընկերություններ: Անգլ. պատմաբանների մեծ մասը միավորված է Պատմական միության (հիմնադրվել է 1906-ին) մեջ:.Պատմական առաջադեմ մտքի կենտրոնն է դեռևս երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին Մ. Բ-ի կոմկուսին կից ստեղծված մարքսիստ-պատմաբանների խումբը:

**Տնտեսագիտությունը**: Տնտեսագիտական միտքը որպես գիտություն ձևավորվել է XVI դ. վերջին — XVII դ. սկզբին՝ կապիտալիստական արտադրահարաբերությունների զարգացման հետ, որի գաղափարախոսները մերկանտիլիստներն էին (Ու. Ստաֆորդ, Թ. *Ման*): Նրանք ուսումնասիրում էին գլխավորապես շրջանառության ոլորտը՝ երկրորդական դեր հատկացնելով արտադրությանը: Հասարակական հարստությունը նույնացնում էին փողի, իսկ վերջինս՝ ազնիվ մետաղների հետ, շահույթի աղբյուր համարում արտաքին առևտուրը: *Մերկանտիլիզմի* օբյեկտիվ հիմքն առևտրական կապիտալի իշխող ազդեցությունն էր: Կապիտալիստական արտադրահարաբերությունների թափանցումն արտադրության ոլորտ, մանուֆակտուրաների աճն ու գյուղատնտեսության մեջ կապիտալիզմի զարգացումը պայմանավորեցին մերկանտիլիզմի քայքայումն ու XVIII դ. *բուրժուական դասական քաղաքատնտեսության* առաջացումը. տնտեսագիտական հետազոտությունները շրջանառության ոլորտից փոխադրվեցին արտադրության ոլորտ, գիտական միտքը խորացավ երևույթների էության մեջ: Ուղղության հիմնադիր Վ. *Պետտին*, նաև Ա. *Սմիթը*, Դ. *Ռիկարդոն* մի շարք կարևոր հայտնագործություններ կատարեցին հասարակական արտադրության և նյութական բարիքների բաշխման օրենքների ըմբռնման մեջ (*արժեքի աշխատանքային տեսություն*, աշխատավարձի, շահույթի, ռենտայի տեսություններ ևն), սակայն չկարողացան բացահայտել կապիտալիզմի շահագործողական էությունն ու պատմականորեն անցողիկ բնույթը, նրա հակամարտ հակասությունները: Բուրժ. դասական քաղաքատնտեսության դրույթները հիմք դարձան անգլ. ուտոպիստ-սոցիալիստների (Թ. Մոր, Ռ. *Օուեն* և ուրիշներ) սոցիալիստական գաղափարների համար (տես *Ուտոպիական սոցիալիզմ*): Նրանք քննադատեցին կապիտալիզմը, փորձեցին հիմնավորել սոցիալիզմի կառուցման հնարավորությունը և կանխագուշակեցին ապագա սոցիալիստական հասարակարգի մի շարք գծեր: Սակայն, դրա հետ մեկտեղ, չընդունեցին դասակարգային պայքարը, իսկ հասարակության սոցիալիստական վերակառուցման ուղին համարեցին կրթված դասերի ռեֆորմատորական գործունեությունը: Կապիտալիզմի հակասությունների խորացման հետևանքով բուրժ. դասական քաղաքատնտեսությունը ճգնաժամ ապրեց և XVIII դ. վերջում զարգացավ գռեհիկ ուղղությամբ (Թ. *Մալթուս*, Ջ. Միլ, Ջ. Մակ-Կուլլոխ, Ն. Սենիոր և ուրիշներ): *Գռեհիկ քաղաքատնտեսության* հիմնական խնդիրն էր քողարկել կապիտալիզմի արատները և այն ներկայացնել որպես շահերի ներդաշնակության կատարյալ համակարգ: Այդ նպատակով նրա տեսաբանները մերժեցին արժեքի աշխատանքային ուսմունքը, առաջադրեցին արժեքի ստեղծման երեք գործոնների (կապիտալ, հող, աշխատանք) տեսությունը և փորձեցին ապացուցել, որ հարստությունը բանվորների, ձեռնարկատերերի և հողատերերի միջև արդարացիորեն է բաշխվում: Իմպերիալիզմի փուլում բուրժ. գռեհիկ քաղաքատնտեսությունը ստացավ հակամարքսիստական ուղղվածություն: Դրա ներկայացուցիչներն արժեքի և հավելյալ արժեքի մարքսյան ուսմունքին հակադրեցին սահմանային օգտակարության (Ու. Ջևոնս), արտադրության ծախսերի (Ա. Մարշալ) տեսությունները, շահույթը հայտարարեցին կապիտալիստի անձնական սպառման «զոհաբերության» և «սպասումի» արդյունք՝ նպատակ ունենալով քողարկելու շահագործումը: 1929—33-ի տնտ. ճգնաժամը ավերիչ հետևանքներ ունեցավ Մ. Բ-ում: Ուստի տնտեսության կարգավորման և ճգնաժամերի վերացման ուղղությամբ դեղատոմսերի մշակումը դարձավ անգլ. բուրժ. տնտեսագիտության առաջնահերթ խնդիրը: Այդ պրոբլեմի լուծման ընդարձակ ծրագրով հանդես եկավ Ջ. Մ. *Քեյնսը*: Նա ճգնաժամերն ու գործազրկությունը համարեց համազգային աղետ և նշեց, որ պետ. բյուջեի միջոցներով դրանք կվերանան (տես *Քեյնսականություն*): Ժամանակակից պետ.-մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում Քեյնսի ուսմունքը նեոքեյնսականություն անվամբ (Վ. Բևերիջ, Ռ. Հարոդ, Ջ. Ռոբինսոն) լայն արձագանք ստացավ բոլոր կապիտալիստական երկրներում: Տնտեսության պետ. կարգավորման նեոքեյնսական ջատագովներին հակադրվեցին նեոդասականները (Լ. Ռոբինսոն, Ջ. Միդ), որոնք ազատ ձեռներեցությունը փառաբանեցին որպես մասնավոր կապիտալի արդյունավետ գործունեության իդեալական պայման: Տնտեսության կապիտալիստական և սոցիալիստական համակարգերի մրցության պայմաններում առաջացան «կապիտալիզմի տրանսֆորմացիայի» վերաբերյալ մի շարք տեսություններ: Լեյբորիստական կուսակցության տեսաբանները (Ջ. Ստրեյչի, Ջ. Քոուլ, Թ. Մորիսոն) մարքսիզմ-լենինիզմին հակադրում են «դեմոկրատական սոցիալիզմ», «համընդհանուր բարօրության պետություն» և այլ տեսություններ, որոնցով փորձում են ժամանակակից պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի հզորացումը ներկայացնել որպես հասարակության սոցիալիստական վերակառուցման ուղի: Այդ տեսությունների դեմ հանդես են գալիս մարքսիստական քաղաքատնտեսության ներկայացուցիչ-

ները (Մ. Դոբ, Պ. Դատ, Դ. Իտոն), որոնք ժամանակակից կապիտալիզմի էկոնոմիկայի առանձնահատկությունների բացահայտման հիման վրա մերկացնում են դրանց ջատագովական էությունը: 1970-ական թթ. անգլ. տնտեսագիտության համար բնորոշ էր մասնագիտացված ճյուղերի (գիտատեխ. առաջընթացի և տնտեսության կոնկրետ ճյուղերի էկոնոմիկաներ) զարգացումը, մաթ.-կիբեռնետիկական մեթոդների և էլեկտրոնային հաշվողական տեխնիկայի, տնտեսագիտական հետազոտություններում՝ հարակից գիտությունների (սոցիոլոգիա, հոգեբանություն, դեմոգրաֆիա ևն) օգտագործումը, տնտ. կանխատեսման և ծրագրավորման արագ ընդլայնումը:

Տնտեսագիտական պետ. հիմնարկությունների աշխատանքը կոորդինացնում է կրթության և գիտության մինիստրությանն առընթեր սոցիալական գիտությունների խորհուրդը: Տնտեսագիտական հետազոտությունների կենտրոններ են համալսարանները (Քեմբրիջի, Լոնդոնի, Բիրմինգհեմի, Գլազգոյի ևն), ինստ-ները (Տնտեսագիտական հետազոտությունների ազգային, Քաղ. և տնտ. պլանավորման, Տնտեսագիտության ևն): Տնտեսագետների պրոֆեսիոնալ կազմակերպություններից խոշորագույնը Թագավորական տնտեսագիտական ընկերությունն է:

**Իրավագիտությունը**: Իրավագիտությունը Մ. Բ-ում ծագել է ընդհանուր իրավունքին (իրավունքի համակարգ Անգլիայում, որի հիմնական աղբյուրը դատական *նախադեպերն* են) զրեթե զուգահեռ (XI—XII դդ.): Անգլ. իրավաբանական միտքը զարգացել է ինքնուրույն՝ հռոմ. իրավունքի ազդեցությունից անկախ: Ի տարբերություն մայրցամաքային Եվրոպայի երկրների, անգլ. իրավագիտությունն ստեղծել և կատարելագործել են իրավաբան-պրակտիկները՝ հիմնականում դատական որոշումների մեկնաբանման ձանապարհով: Արդարության իրավունքի (ընդհանուր իրավունքի հետ զուգահեռաբար գործող իրավունքի համակարգ, որը կիրառվել է ընդհանուր իրավունքի դատարանների որոշումներից դժգոհ քաղաքացիների՝ թագավորին ուղղված բողոքների կապակցությամբ: Գործերի քննության համար լորդ-կանցլերին կից ստեղծվել է դատարան, որը ընդհանուր իրավունքի նորմերի փոխարեն ղեկավարվել է, իբր, արդարության սկզբունքներով (առաջացմանը զուգահեռ զարգացել է իրավագիտության համապատասխան ուղղությունը, որը, ի տարբերություն ընդհանուր իրավունքի, կրել է հռոմ. և կանոնական իրավունքի ազդեցությունը): Անգլ. իրավական համակարգում չկան հանրային և մասնավոր իրավունքներ կամ, ինչպես մայրցամաքային Եվրոպայում, իրավունքի առանձին ավանդական ճյուղեր, հստակորեն չեն տարանջատված նյութական և դատավարական իրավունքները, և այդ յուրահատկությունն արտացոլված է նաև անգլ. իրավագիտության մեջ: Իրավունքի առաջին տրակտատներում (Գլենվիլ, Բրակտոն) մշակվել են վեստմինստերյան դատարաններ (միջնադարյան Անգլիայի բարձր դատարանների ընդհանուր անվանումը) դիմելու արարողության կանոնները: XV—XVI դդ. Տ. Լիթլտոնի, Ջ. Ֆորտեսքյուի, Սենտ-Ջերմենի աշխատություններում վարդապետական մեկնաբանման ենթարկվեցին անգլ. իրավունքի կարևորագույն ինստ-ներն ու դատական նախադեպերը: XVII դ. ստեղծվեց Է. Կոկի «Անգլիական իրավունքի ինստիտուտներ» հիմնարար աշխատությունը: Իրավունքի բուրժ. գաղափարախոսությունն առավել լրիվ արտացոլվել է ժամանակակից իրավագիտության հիմնադիր Բլեքստոնի աշխատություններում («Անգլիական օրենքների մեկնաբանություններ»): XVIII դ. առավել նշանակալի էին սահմանադրական իրավունքի լիբերալ-բուրժ. ուղղության հիմնադիր Ե. Բենթամի աշխատությունները:

XIX դ.—XX դ. սկզբին աչքի ընկան մի շարք պետականագետներ (Ու. Բեջգոտ, Ջ. Ս. Միլ, Ս. Դայսի, Ու. Էնսոն, Ս. Լոու, Թ. Մեյ և ուրիշներ), որոնք կանխորոշեցին պետության մասին անգլ. բուրժ. գիտության և քաղ. գիտության հիմնական ուղղությունները: Նորագույն ժամանակներում ընդհանուր իրավունքի, արդարության իրավունքի, քաղաքացիական, քրեական իրավունքի, իրավունքի անգլ. պատմության ևն խնդիրների մշակման հարցում աչքի են ընկել Ֆ. Մեյտլենդը, Կ. Քեննին, Պ. Դաֆֆը, Դ. Տերները, Գ. Սթրիտը, Ա. Կրոսսը, Դ. Դոբը և ուրիշներ: Սահմանադրական իրավունքի, քաղ. գիտության, վարչական իրավունքի և տեղական կառավարման ուսումնասիրությամբ են զբաղվել Ա. Ջենինգսը, Հ. Մորիսոնը, Հ. Լասկին, Ռ. Մյուրը, Ա. Քիտը, Դ. Մեյը, Բ. Քարտերը, Դ. Մուդին, Լ. Էմերին, Ու. Մորիս Ջոնսոնը, Դ. Մակինտոշը և ուրիշներ, որոնք անգլ. պետ. իրավունքի ու իրավունքի մյուս ճյուղերի խնդիրներն ուսումնասիրում են կապիտալիստական պետականությունը ջատագովելու ոգով՝ բրիտ. պետությունը հռչակելով «համընդհանուր բարօրության պետություն»: Անգլ. ժամանակակից իրավագիտության մեջ հատուկ տեղ են զբաղեցնում մարքսիստ գիտնականներ Ջ. Գուլանը, Դ. Հարվին և ուրիշներ:

Իրավունքի բնագավառի գիտական կարևոր կենտրոններն են Լոնդոնի, Քեմբրիջի և Օքսֆորդի համալսարանները: Հրատարակվում են իրավաբանական բազմաթիվ ամսագրեր:

**3. Գիտական հիմնարկները**

Անգլ. գիտության ու տեխնիկայի զարգացման առանձնահատկությունները պայմանավորված են հետազոտական աշխատանքի կազմակերպմամբ:

XX դ. սկզբին բոլոր խոշոր համալսարաններն ունեին իրենց հետազոտական լաբորատորիաները: Հիմնարար և տեխ. հետազոտությունների կապն անբավարար էր: 1915—40-ին կառավարությունը արդյունաբերության մեջ տեխ. հետազոտությունների արմատավորման քայլերի դիմեց: Մասնավորապես քիմ. ու էլեկտրամեքենաշինական արդյունաբերության մեջ հիմնվեցին մասնավոր լաբորատորիաներ, որոնք զբաղվում էին նոր տեխնոլոգիայի մշակմամբ: 1939-ին արդեն կար այդպիսի 10 խոշոր լաբորատորիա: 1945-ից հետո հետազոտական կենտրոնների թիվը շեշտակիորեն ավելացավ: 1969-ին գիտական հետազոտություններ էին կատարվում 34 համալսարաններում, «նորագույն տեխնիկայի» 11 կոլեջներում, 500-ից ավելի աշխատող և 3 մլն ֆունտ ստեռլինգից ավելի առևտրական շրջանառություն ունեցող բոլոր ֆիրմաներում: Բոլոր աշխատանքների 70%-ը կատարում են մասնավոր արդ. լաբորատորիաները: Ետպատերազմյան շրջանում ավելի քան կրկնապատկվեց կոոպերատիվ հետազոտական ընկերությունների թիվը: 1954-ին ձևավորվեց միջուկային ֆիզիկայի և էներգետիկայի պրոբլեմները հետազոտող պետ. ինստ-ների ցանցը: Ստեղծվել են միկրոկենսաբանության, քվանտային էլեկտրոնիկայի, ռադիոաստղագիտության և այլ գիտական կենտրոններ: 1949-ին ստեղծվել է ազգային հետազոտությունների զարգացման կորպորացիան, որը հետազոտական հիմնարկներին աջակցում է գյուտերի արտոնագրերի մշակման և իրացման գործում: 1964-ին գիտության մինիստրությունը վերակազմվեց կրթության և գիտության մինիստրության, որն ունի բժշկագիտության, բնական, գյուղատնտ., սոցիալական գիտությունների հետազոտական խորհուրդներ: Տեխ. հետազոտությունները կոորդինացնում է ավիացիայի մինիստրությունը: Կտրուկ աճում է գիտության ֆինանսավորումը: Կրթության և գիտության մինիստրությանը կից գործում է գիտատեխ. ինֆորմացիայի վարչությունը:

**XII. Մամուլը, ռադիոհաղորդումները, հեռուստատեսությունը**

Մ. Բ-ում լույս են տեսնում ավելի քան 140 օրաթերթ, 1200 շաբաթաթերթ, 4 հզ. ամսագիր և այլ պարբերական հրատարակություններ: Մամուլում իշխում է մոնոպոլիաների մի նեղ խումբ: Թերթերի մեծ մասը արտահայտում է պահպանողական կուսակցության շահերը: Դրանցից են՝ «Դեյլի թելեգրաֆ էնդ մորնինգ պոստ» («The Daily Telegraph and Morning Post», 1855-ից) և «Սանդի թելեգրաֆ» («The Sunday Telegraph», 1961-ից): Պահպանողական դիրքերից են հանդես գալիս նաև «Դեյլի էքսպրես» («Daily Express», 1900-ից), «Սանդի էքսպրես» («Sunday Express», 1918-ից), «Դեյլի մեյլ» («Daily Mail», 1896-ից), «Սանդի թայմս» («Sunday Times», 1822-ից) թերթերը, «Էքոնոմիստ» («The Economist», 1834-ից), «Սփեկթեյթըր» («Spectator», 1828-ից) հանդեսները և մի շարք այլ հրատարակություններ: *«Թայմս»* («The Times», 1785-ից) թերթն անկախ է, սակայն գործնականում մոտ է կանգնած պահպանողականներին: Լեյբորիստական կուսակցության թերթերն են՝ «Դեյլի միրոր» («Daily Mirror», 1903-ից), «Սանդի միրոր» («Sunday Mirror», 1915-ից), «Փիփըլ» («The People», 1881-ից): Կուսակցության ձախ թևի տեսակետն է արտահայտում «Տրիբյուն» («Tribune», 1937-ից) շաբաթաթերթը: Լիբերալ մտավորականության հայացքներն են արտահայտում «Գարդիան» («The Guardian», 1821-ից), «Օբսերվեր» («The Observer», 1791-ից) թերթերը: Կոմունիստական կուսակցության հրատարակու-


«Դեյլի էքսպրես» թերթի խմբագրության շենքը Լոնդոնում (1932, ճարտ-ներ՝ Հ. Օ. Էլիս, Քլարկ)

թյուններն են՝ «*Մորնինգ սթար*» («Morning Star», 1930-ից) թերթը, «Քոմենթ» («Comment», 1921-ից) շաբաթաթերթը, «Մարքսիզմ թուդեյ» («Marxism Today», 1957-ից), «Լեյբոր մանթլի» («The Labour Monthly», 1921-ից) հանդեսները:

Մ. Բ-ի առաջատար ինֆորմացիոն-հեռագրական գործակալություններն են՝ Ռեյտեր (Reuter), Փրես ասոշիեյշըն (The Press Association) և Էքսչեյնջ թելեգրաֆ (The Exchange Telegraph): Ռադիոհաղորդումներն սկսվել են 1922-ին: 1927-ից այդ բնագավառի մենաշնորհը պատկանում է կառավարության կողմից վերահսկվող Բրիտանական ռադիոհաղորդման կորպորացիային (*Բի-Բի-Սի*): Բի-Բի-Սին կանոնավոր հեռուստահաղորդումներն սկսել է 1936-ից:

**XIII. Գրականությունը**

Անգլիացիների նախնիները՝ մայր ցամաքից եկած անգլո-սաքսերը, իրենց հետ բերել են գերմ. առասպելներ ու ավանդազրույցներ, որոնք բերանացի հաղորդվել են սերնդե սերունդ և սկսել գրառվել քրիստոնեության ընդունումից հետո: VII դ. վերջին ստեղծված «*Բեովուլֆ*» էպիկական պոեմը մեր օրերն է հասել X դ. ձեռագրով: VIII—X դդ. բրիտ. հողում երևան եկան անգլո-սաքսերի կրոնական, աստվածաբանական աշխատություններ, տարեգրություններ: Անգլիայի նորմանդական նվաճումից հետո, XI—XIII դդ. սկսեց զարգանալ ֆեոդ. աշխարհի եռալեզու գրականությունը. եկեղեցական գրականություն՝ լատիներեն, ասպետական բանաստեղծություններ ու պոեմներ՝ ֆրանսերեն, անգլ. ավանդազրույցներ՝ անգլո-սաքսոներեն: XIV դ. կեսին ձևավորվեց համազգային անգլերենը: Այդ շրջանում ազնվականական իդեալների արտահայտիչն էր Ջոն Գաուերը, գյուղացիությանը՝ Ու. Լենգլենդը: XIV դ. վերջին երևան եկավ Ջ. Չոսերի չափածո վիպակների ու նովելների ժողովածուն, որին բնորոշ էին հասուն ֆեոդալիզմի դարաշրջանի մշակույթի սինթեզը և վաղ Վերածննդի նախադրյալները: Միջնադարյան սակավաթիվ հուշարձաններից է Թոմաս Մելորիի (XV դ.) «Արթուրի մահը» ավանդազրույցների արձակ շարադրանքը: Հարուստ է եղել ժող. պոեզիան՝ լեգենդար, պատմական, դրամատիկական բնույթի բալլադներ:

XVI դ. սկզբին հանդես եկավ Թոմաս Մորը՝ «Ուտոպիա» գրքի հեղինակը: XVI դ. 2-րդ կեսին տիրապետող գաղափարական հոսանք դարձավ հումանիզմը: Էպիկական պոեզիայի բարձրագույն նվաճումը եղավ Է. Սպենսերի «Փերիների թագուհին» (1590) պոեմը: Երևան եկան արկածային և խաբեբայապատում վեպեր, հովվերգական գրականություն: XVII դ. սկզբին հայտնվեց էսսեների (Ֆ. Բեկոն) և բնութագրությունների (Տ. Օվերբերի) ժանրը: Բայց գեղարվեստական առավել բարձրության հասավ անգլ. հասուն Վերածննդի դրամատուրգիան: Եպիսկոպոս Ջ. Բեյլի «Արքա Ջոնը» (1548) պատմական առաջին դրաման է: XVI դ. կեսին ակադեմիական շրջանակներում բեմադրվեցին անգլ. առաջին դրամաները՝ գրված անտիկ ողբերգությունների նմանությամբ: Ժող. թատրոնում, որը բուռն զարգացում ապրեց XVI դ. 2-րդ կեսին, առաջացավ ազգային ինքնատիպ դրամատուրգիան (Ք. Մառլո, Ռ. Գրին, Թ. Քիդ): Հումանիստական դրաման ստեղծողների շարքն է դասվում նաև Ջ. Լիլին (1554—1606): Սրանց գործունեությունը հող նախապատրաստեց մեծ դրամատուրգ Ու. Շեքսպիրի (1564—1616) համար: Տաղանդավոր դրամատուրգների համաստեղությանն են պատկանում Բ. Ջոնսոնը (մոտ 1573—1637), Թ. Հեյվուդը (մոտ 1574—1641), Թ. Դեքերը (1609—66), Ֆ. Բոմոնթը (մոտ 1584—1616), Ջ. Ֆլեթչերը (1579—1625): Անգլ. բուրժ. հեղափոխությունը վերջ դրեց հումանիստական դրամայի զարգացմանը. պուրիտանների պահանջով 1642-ին փակվեցին բոլոր թատրոնները: Բուրժ. հեղափոխության ակտիվ գործիչ Ջ. Միլթոնը (1608—1674) Ռեստավրացիայի շրջանում ստեղծեց «Դրախտ կորուսյալ» (1667) բիբլիական սյուժեով էպիկական պոեմը, որը բիբլիական կերպարների միջոցով արտացոլեց դարաշրջանի սոցիալական ուժերի տիտանական պայքարը:

1688—89-ի, այսպես կոչված, «Փառահեղ հեղափոխությունը» սկզբնավորեց անգլ. գրականության մի նոր շրջան, որի ուշադրության կենտրոնում կանգնեց նոր (բուրժ.) հասարակության շարքային մարդը: XVIII դ. գաղափարական առաջատար հոսանքը դարձավ լուսավորականությունը: Գրականության մեջ առաջնությունը պոեզիայից անցավ արձակին: Երևան եկավ բուրժ. վեպը, որի ստեղծողն էր Դ. Դեֆոն (1661—1731): Նրա «Ռոբինզոն Կրուզո» (1719) ստեղծագործության մեջ տրված է բնությունը նվաճող եռանդուն աշխատավորի իդեալականացված կերպարը: Ջ. Սվիֆթի (1667—1745) «Գուլիվերի ճանապարհորդությունը» (1726) գրքի երգիծանքը ոչնչացնող քննադատության է ենթարկում Անգլիան, որը ֆեոդալիզմից բուրժ. կարգերին անցնելու շրջան էր ապրում: Անգլ. սոցիալական-ռեալիստական վեպը ազդեցություն գործեց եվրոպական ամբողջ գրականության վրա:

Դրամատուրգիայում լուսավորական կլասիցիզմն առավել արտահայտություն գտավ Ջ. Ադիսոնի «Կատոն» (1713) և Ս. Ջոնսոնի «Իրենա» (1749) ողբերգություններում: Նոր ուղիներ նշեց Ռ. Սթիլի «Ամաչկոտ սիրահարներ» (1722) սենտիմենտալ կատակերգությունը, սակայն դրամայի ասպարեզում իսկական հեղաշրջում առաջացրեց Ջ. Լիլոն (1693—1739), որն ստեղծեց բուրժ. առաջին ողբերգությունը («Լոնդոնցի վաճառականը», 1731): Անգլ. թատրոնում շատ ուժեղ էր երգիծանքը, որն իր բարձրակետին հասավ Ռ. Բ. Շերիդանի (1751—1816) ստեղծագործության մեջ: Այդ շրջանում վերստին ուժեղացավ հետաքրքրությունը ժող. պոեզիայի նկատմամբ. հանրաճանաչ դարձավ շոտլանդացի բանաստեղծ Ռ. Բյոռնսը (1759—96):

XVIII դ. 90-ական թթ. առաջացավ ռոմանտիզմը: Ու. Ուորդսուորթը (1770—1850), Ս. Թ. Քոլրիջը (1772—1834), Ռ. Սաութին (1774—1843), որոնք երբեմն միավորվում են «լճային դպրոց» հասկացությամբ, կոչ էին անում վերադառնալ դեպի բնությունը, նահապետականությունը, կյանքի սովորական փաստերը պարուրում էին ռոմանտիկ խորհրդավորությամբ: Անգլ. ռոմանտիկների երկրորդ սերունդը՝ Ջ. Բայրոնը (1788—1824), Պ. Շելլին (1792—1822), Ջ. Քիտսը (1795—1821), կտրականապես մերժեց «լճային դպրոցի» քաղ. պահպանողականությունը: Վ. Սկոտը (1771—1832) ստեղծեց պատմավեպի ժանրը:

Անգլ. գրականության նոր շրջանն սկսվեց XIX դ. 30-ական թթ.: 1830—60-ական թթ. քննադատական ռեալիզմի ծաղկման շրջանն են: Չ. Դիքենսի (1812—70), Ու. Մ. Թեքերեյի (1811—63), Շ. Բրոնտեի (1816—1855), Է. Գասկելի (1810—65) վեպերում գունեղ կերպով պատկերված են բուրժուազիայի բոլոր խավերը և, որ նորություն էր, ցույց է տրված իր իրավունքների համար պայքարող բանվոր դասակարգը: XIX դ. վերջին անգլ. վիպագրության ասպարեզում սուր հակասություն նկատվեց Ռ. Լ. Սթիվենսոնի (1850—94) նեոռոմանտիզմի և Թ. Հարդիի (1840—1928) ու Ս. Բաթլերի (1835—1902) խստաշունչ ռեալիզմի միջև: Անգլ. նատուրալիզմի ներկայացուցիչներ Ջ. Մուրը (1852—1933) և Ջ. Գիսսինգը (1857—1903) Է. Զոլայի հետևորդներն էին: XIX դ. դրաման կյանքի ճշմարտացիությամբ և սոցիալական սրությամբ զգալիորեն զիջում է վեպին:

XIX դ. 90-ական թթ. սկսվում է անգլ. նորագույն գրականության շրջանը (Օ. Ուայլդ, 1854—1900, Ու. Ցեյթս, 1865—1939): XIX դ. վերջին տասնամյակը և առաջին համաշխարհային պատերազմին նախորդած տարիներն աչքի են ընկնում քննադատական ռեալիզմի խիստ զարգացումով. Բ. Շոու (1856—1950), Ջ. Գոլսուորդի (1867—1933), Խ. Գրենվիլ-Բարքեր (1877—1946), Հ. Ուելս (1866—1946): Ավանդական ռեալիստական վեպի ու նովելի ուղիով են ընթացել նաև Ու. Սոմերսեթ Մոեմը (1874—1965), Է. Մ. Ֆորսթերը (1879—1970), Ա. Քոփարդը (1878—1957), Քեթրին Մենսֆիլդը (1888—1923) և ուրիշներ: Առանձնակի է Ջ. Քոնրադը (1857—1924), որը ծովային ճանապարհորդությունների ռոմանտիկան և էկզոտիկ երկրների նկարագրությունները զուգակցեց նուրբ հոգեբանության հետ: XIX դ. վերջի — XX դ. սկզբի պոեզիան ամենից ինքնատիպ ներկայացրել է Ռ. Կիպլինգը (1865—1935):

Առաջին համաշխարհային պատերազմը և ետպատերազմյան ճգնաժամը նկատելի փոփոխություններ մտցրին անգլ. գրականության մեջ, որը զարգացման նոր շրջան

էր թևակոխում: Պոեզիան վճռականապես հրաժարվեց տաղաչափության ավանդական ձևերից ու բանաստեղծական պատկերավորությունից: Մոդեռնիստական ուղղությունը Մ. Բ-ում գլխավորեցին ամերիկացիներ Թ. Էլիոթը և Է. Փաունդը: Երկու պատերազմների միջև ընկած ժամանակաշրջանի դրամատուրգիայում առավել հայտնի են Ն. Կոուարդը, Ջ. Բարրին, Ս. Մոեմը, Ջ. Պրիստլին (ծն. 1894): Այդ շրջանի գրականության մեջ հիմնականը մնում է վեպը, որտեղ նույնպես առաջանում է մոդեռնիստական փորձարարություն: Իռլանդացի Ջ. Ջոյսը (1882—1941) «Ուլիս» (1922) վեպում կիրառեց գրականության մեջ «բանականության հոսքի» մեթոդը, որն արձանագրում է գործող անձանց ներքին կյանքի մանրամասները: Մոդեռնիստական վեպի այլ ներկայացուցիչներ՝ Դ. Ռիչարդսոնը, Վ. Վուլֆը ընթանում էին Ջոյսի հետքերով: Ֆրեյդիզմին մոտեցող հոգեբանական նուրբ վերլուծությունն է բնորոշ Դ. Լորընսի (1885—1930) համար: Մոդեռնիզմի և ռեալիզմի միջև տատանվում էր Օ. Հաքսլիի (1894—1963) ստեղծագործությունը: Առավել հետևողական է Ռ. Օլդինգթոնի (1892—1962), Ա. Կրոնինի (ծն. 1896), Ջ. Բ. Պրիստլիի ռեալիզմը, որոնք արտացոլեցին երկրի ժամանակակից սոցիալական կյանքը: Երգիծական վեպի վարպետ Է. Վոն (1903—1966) ծաղրանքով է պատկերել հասարակության ազնվականական ու բուրժ. վերնախավերին, թեև պահպանողական դիրքերից:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո հանդես եկավ վիպագիրների մի նոր սերունդ, որն արտացոլեց բուրժ. հասարակության ճգնաժամը: Հետադիմական, հակակոմունիստական դիրք գրավեց Ջ. Օրուելը: Էկզիստենցիալիստական մոտիվներն են բնորոշ Ու. Գոլդինգի համար: Թեև էկզիստենցիալիզմն է վիպասանուհի Այրիս Մյորդոկի գործերի փիլ. հիմքը, այնուամենայնիվ, նրա ստեղծագործությունը դոկտրինայից ավելի լայն է և հարում է ռեալիզմին: Հեգնանքն է բնորոշ Է. Ուիլսոնի կենցաղային հոգեբանական վեպերի համար: Սոցիալական ու հոգեբանական մոտիվներով է առանձնանում Ջ. Քերիի ստեղծագործությունը: Գ. Գրինի (ծն. 1904) գործերում զուգակցվում են սոցիալական քննադատությունը, նուրբ հոգեբանությունը և արկածախնդրային մոտիվները: Մ. Բ-ի սոցիալական և ինտելեկտուալ ժամանակագրությունն է ստեղծել Չ. Սնոուն «Օտարներ ու եղբայրներ» վիպաշարում: Հասարակության դեմոկրատական խավերի կյանքն է արտացոլված Ջ. Լինդսեյի, Ջ. Լեմբերտի, Գ. Թոմասի վեպերում: 1950-ական թթ. կեսերին երևան եկավ «բարկացած երիտասարդների» գրականությունը, որի գլխավոր ներկայացուցիչներն են (վեպի ասպարեզում) Ք. Էյմիսը, Ջ. Ուեյնը, Ջ. Բրեյնը: Նորագույն՝ «բանվորական» վեպի ցայտուն դրսևորումներ եղան Ա. Սիլիթոուի, Ս. Չափլինի, Ս. Բարսթոուի գրքերը: Քաղ. մոտիվներով են հագեցած Ջ. Օլդրիջի՝ բրիտ. իմպերիալիզմը մերկացնող վեպերը: Հակագաղութականության թեման է Բ. Դևիդսոնի, Դ. Ստյուարտի, Ն. Լյուիսի ստեղծագործության հիմքը: Մոդեռնիստական պոեզիայի առավել նշանավոր ներկայացուցիչն է եղել Դ. Թոմասը (1914—53): Մ. Բ-ի 1960-ական թթ. գրականության մեջ յուրօրինակ երևույթ էր փիլ. և բնագիտական թեմաներով արձակը: Ջ. Օսբոռնի «Զայրացած պահիդ ետ նայիր» (1956) պիեսի երևան գալով լրջորեն աշխուժացավ անգլ. դրաման: Օսբոռնի, Շ. Դիլենիի, Ա. Ուեսքերի, Ռ. Բոլթի, Բ. Բիենի, Խ. Փինթերի, Ջ. Արդենի, Ն. Սիմփսոնի պիեսներն առաջադրեցին մի շարք սոցիալական սուր խնդիրներ և վերակենդանացրին թատրոնի հասարակական նշանակությունը: Արդեն 1960-ական թթ. ասպարեզ եկավ դրամատուրգների մի նոր սերունդ՝ Դ. Մերսեր, Գ. Լիվինգս, Ջ. Օրտոն, Ջ. Մորտիմեր, Դ. Ռուդկին:

Գ ր ա կ ա ն ա գ ի տ ու թ յ ու ն ը: Գրականագիտական առաջին երկերն ստեղծվել են միջին դարերում: Սակայն գրականագիտությունը որպես ինքնուրույն գիտություն երևան է եկել XIX դ. կեսին: XIX—XX դդ. սահմանագծին զարգացել է պոզիտիվիստական գրականագիտությունը (Ա. Ուորդի, Ջ. Սեյնթսբերիի աշխատությունները, 15 հատորանոց «Անգլիական գրականության քեմբրիջյան պատմությունը»): Հակապոզիտիվիստական հոսանքները կապված են Մ. Առնոլդի և էսթետիզմի տեսաբաններ Ջ. Ռեսկինի, Ու. Պեյթերի, Ա. Սուինբեռնի, Օ. Ուայլդի անունների հետ: Առաջին համաշխարհային պատերազմից հետո անգլ. գրականագիտության մեջ իդեալիստական ուղղությունը ներկայացնում է Թ. Էլիոթը՝ «արվեստագետի ապաանհատավորման» իր տեսությամբ. նա պահանջում է մշակույթի կաստայական սահմանափակություն և հրաժարումն պոեզիայի հասարակական հնչեղությունից: Ա. Ռիչարդսի և Թ. Հյումի հետ Էլիոթը հիմնադրեց ֆորմալիստական «նոր քննադատությունը», որը գրական երկը դիտում էր որպես ինքնուրույն կառուցվածք: Նեոքննադատությունը տարածվեց 1950—60-ական թթ. (Ֆ. Լիվիս):

1930-ական թթ. զարգացավ մարքսիստական գրականագիտությունը, որը ներկայացված է Ռ. Ֆոքսի, Ք. Քոդուելի, Ա. Ուեստի, Տ. Ջեքսոնի, Ջ. Լինդսեյի, Ա. Քեթլի աշխատություններով: Ընդհանուր բնույթի գործերից աչքի է ընկնում մարքսիստ պատմաբան Ա. Մորթոնի «Բրիտանիայի իսկությունը» (1966) աշխատությունը:

Վեպի խնդիրների մշակման համար կարևոր նշանակություն ունեն Ու. Ալլենի աշխատությունները: Դրամատիկական արվեստի և ժամանակակից արմ. դրամայի փիլ. բովանդակության հարցերին են նվիրված Է. Բենտլիի «Դրամայի կյանքը» (1967) և Ռ. Ուիլյամսի «Արդի ողբերգությունը» (1966) աշխատությունները:

**XIV. Ճարտարապետությունը և կերպարվեստը**

Մ. Բ-ում պահպանվել են էնեոլիթի և բրոնզի դարի մեգալիթյան կառույցներ (Սթոնհենջ), I—V դդ. հռոմ. շինությունների մնացորդներ, կելտերի, պիկտերի, անգլո-սաքսերի քարի քանդակազարդումներ և մետաղյա իրեր, ժող. հիմնակմախքային շինություններից ծագող եկեղեցի-



Տաճար Իլիում (XI—XIV դդ.), արևմտյան ճակատը

ներ (Էռլս Բարթոն, X դ.): XI—XII դդ. ռոմանական ոճին բնորոշ օրինակներ են անգլո-նորմանական տաճարները (Նորիջում, Ուինչեստերում, Իլիում), աշտարակաձև դղյակները (Թաուերը Լոնդոնում, 1078—85), ուինչեստերյան դպրոցի մանրանկարները: XII դարից զարգացել է անգլ. գոթիկան (Քենտերբերիի, Լինկոլնի, Սոլսբերիի, Յորքի, Ուելսի, Էքսետերի տաճարները, Վեստմինստերյան աբբայությունը Լոնդոնում): Ուշ գոթիկան («ուղղաձիգ ոճ», XIV դ. 2-րդ կեսից) աչքի է ընկնում աշխարհիկ և եկեղեցական կառույցների ընդարձակ, լուսավոր ինտե-

Տաճար Էքսետերում (1270—1370), ներքին տեսքը



րիերների քանդակազարդ հարդարանքով (Վինձորի Սենտ-Ջորջ, 1474—1528, Լոնդոնի Վեստմինստերի Հենրիխ VII-ի, 1503—19, կապելլաները, կոլեջներ, ճաշկերույթի սրահներ), հաստոցային, այդ թվում՝ դիմանկարային գեղանկարչության սկզբնավորմամբ: Առանձնապես նրբագեղ են միջնադարյան գործվածքները, քանդակազարդ իրերը, ասեղնագործության, գորգագործության, ոսկերչության նմուշները: Ռեֆորմացիան անգլ. մշակույթին տվել է զուտ աշխարհիկ բնույթ: Վերածննդի դարաշրջանում ձևավորվել է դաստակերտ-տան տիպը, որը պահպանվել է մինչև մեր օրերը՝ շնորհիվ հատակագծի և հորինվածքի հարմարությունների:

XVI—XVII դդ. գեղանկարչության մեջ հիմնականը դիմանկարն էր: 1526—28-ին Մ. Բ-ում ստեղծագործել է Հ. Հոլբայնը, որի ավանդույթները զարգացրել են մանրանկարիչներ Ն. Հիլիարդը, Ա. Օլիվերը, Ս. Կուպերը: XVII դ. արիստոկրատական դիմանկարի՝ Մ. Բ-ում վերաբնակած Ա. վան Դեյքի, Գ. Նելլերի շնորհիվ մուտք գործած տիպը անգլիացի հետևորդներ Ու. Դոբսոնի, Ջ. Ռայլի աշխատանքներում ձեռք է բերել ավելի պարզություն ու վավերականություն: XVII—XVIII դդ. անգլ. կլասիցիզմի զարգացումն սկսվել է Ի. Ջոնսի շինություններով (ճաշկերույթի սրահ Լոնդոնում, 1619—22), որը հենվում էր Պալլադիոյի ժառանգության վրա: Ստեղծվել են քաղաքային անսամբլներ (Գրինվիչի հոսպիտալը, 1616—1728, ճարտ. Կ. Ռեն և ուրիշներ, Ֆիցրոյ-սքվերը, մոտ 1790—1800, ճարտ. Ռ. և Ջ.Ադամ, Լոնդոնում, Շառլոտայի հրապարակը Էդինբուրգում, 1792—1807, ճարտ. Ռ. Ադամ), եկեղեցիների (Ս. Պողոսի տաճարը, 1675—1710, 1666-ի հրդեհից հետո Կ. Ռենի կառուցած 52 եկեղեցիները Լոնդոնում), հասարակական շենքերի (Ռեդկլիֆի գրադարանը Օքսֆորդում, 1737—1749, ճարտ. Ջ. Գիբս), դաստակերտային և սեկցիոն (2—3-հարկանի բնակարաններով) քաղաքային տների, գյուղական կոտեջների կոմպոզիցիաներ: Մ. Բ. կեղծ գոթիկայի ռոմանտիկական հոսանքի և «անգլիական» բնանկարային զբոսայգիների հայրենիքն է (Ու. Քենտ, Ու. Չեյմբերս): XVIII դ. անգլ. արվեստի ծաղկումն սկսվել է Ու. Հոգարթի ստեղծագործությամբ: Դիմանկարիչներ Ջ. Ռեյնոլդսը, Թ. Գեյնսբորոն, Հ. Ռեբյոռնը հմտորեն զուգակցել են հորինվածքի ցուցադրական ազդեցիկությունն ու կերպարի մտերմիկ բնականությունը, սոցիալական ու անհատական բնութագիրը: Տպավորիչ դիմանկարների հեղինակներ են Ջ. Ռոմնին, Ջ. Հոփները, Թ. Լորենսը: Ձևավորվել են բնանկարի (Գեյնսբորո, Ռ. Ուիլսոն, Ջ. Կրոմ) և ժանրային գեղանկարչության (Ջ. Մոռլենդ, Ջ. Ռայթ) ազգային դպրոցները: XVIII դ.—XIX դ. 1-ին կեսին կարևոր դեր է խաղացել քաղ. ու կենցաղային ծաղրանկարչությունը (Ջ. Գիլրեյ, Թ. Ռոուլենդսոն): Թ. Բյուիքը հորինել է կտրվածքավոր փայտափորագրությունը: XVII—XVIII դդ. դեկորատիվ արվեստի բարձր զարգացման վկայություններն են Թ. Չիփենդեյլի, Ջ. Հեփլուայթի և Թ. Շերաթոնի



Օլթոն բնակելի համալիրը Ռոուհեմփթոնում (1954—56, ճարտ-ներ՝ Հ. Բեննետ, Ռ. Մեթյու, Լ. Մարտին, Ու. Լյուիս)

շքեղ ու հարմար կահույքը, բյուրեղապակու և հախճապակու գյուտն ու արտադրությունը (Ջ. Ուեջվուդի մանուֆակտուրայի կերտվածքները Ջ. Ֆլաքսմենի ռելիեֆներով), Մորտլեյքի շպալերային մանուֆակտուրայի, Բոուի, Չելսիի, Վուստերի, Դերբիի ճենապակու գործարանների արտադրանքը, նուրբ դրվագված արծաթյա իրերի պատրաստումը: Արդ. հեղաշրջումը Մ. Բ-ի քաղաքները վերածեց վիթխարի ինդուստրիալ-առևտրական կենտրոնների, որոնք զանգվածաբար սկսել են կառուցապատվել գերբնակեցված աղյուսե անշուք տների երկար շարքերով: Կամուրջների և ծածկերի մետաղե բարդ կոնստրուկցիաների մշակումը (ինժեներներ՝ Թ. Թելֆորդ, Ռ. Ստիվենսոն), Ջ. Պակստոնի կառուցած «Բյուրեղապակե պալատի» (1851) ապակե լրացումներով հավաքովի

Հովհաննես Ավետարանիչ, մանրանկար «Գրիմբալդի Ավետարանից» (XI դ. սկիզբ, Բրիտանական թանգարան, Լոնդոն)



մետաղե հիմնակմախքը նախապատրաստեցին նորագույն ճարտ. ռացիոնալ մեթոդները: Սակայն գլխավոր ջանքերն ուղղված էին քաղաքային կենտրոնների և բուրժ. թաղամասերի կառուցապատմանը: Կլասիցիզմին ու XIX դ. սկզբին էկզոտիկայով ռոմանտիկորեն հրապուրվելուն (Ջ. Նեշ) շուտով փոխարինեցին նեոկլասիկան (Լոնդոնի Բրիտանական թանգարանը, 1823—57, ճարտ. Ռ. և Ս. Սմյորկ) և նեոգոթիկան (պառլամենտը Լոնդոնում, 1840—68, ճարտ. Չ. և Է. Բերրի, Օ. Փյուջին, եկեղեցիներ՝ Ջ. Գ. Սքոթի նախագծերով), իսկ հետո՝ բացահայտ էկլեկտիկան: XIX դ. 1-ին կեսին ֆանտաստ-ռոմանտիկների՝ գրաֆիկ Ու. Բլեյքի և բնանկարիչ Ու. Թյոռների կողքին ստեղծագործում են ռեալիստական բնանկարի հիմնադիր Ջ. Կոնստեբլը, Ռ. Պ. Բոնինգթոնը, բնանկարի (ջրաներկ) վարպետներ Ջ. Ս. Կոտմենը և Դ. Կոքսը, ժանրային նկարների վարպետ Դ. Ուիլքին: XIX դ. կեսին սալոնային-ակադեմիական արվեստի (Ֆ. Լեյթոն, Լ. Ալմա-Թադեմա) գերիշխանության ֆոնի վրա առանձնանում են Ֆ. Մ. Բրաունի և «Նախառաֆայելականների եղբայրության» (առաջացել է 1848-ին, Դ. Գ. Ռոսետտի, Ջ. Է. Միլլես, Հ. Հանտ) փորձը՝ վերադառնալու միջնադարյան և վաղվերածննդյան արվեստի անմիջականությանը: Ուշ շրջանի նախառաֆայելականները (Ու. Մորիս, Է. Բյոռն-Ջոնս, Ու. Կրեյն) ձգտում էին կենցաղ ներմուծել գեղագիտական սկզբունքներ, մեքենայական արդյունաբերությանը հակադրել ձեռքի արհեստը (գեղարվեստա-արդ. արհեստանոցներ, գրքի ձևավորում): Զուգահեռ կատարվում էին մենատների ռացիոնալության, պարզության ու հարմարավետության որոնումներ (Բ. Սքոթ, Ն. Շո, Չ. Ֆ. Վոյզի): XIX դ. 2-րդ կեսին Ջ. Մ. Ուիսթլերը Մ. Բ-ի գեղանկարչություն է ներմուծել իմպրեսիոնիզմի սկզբունքները, որոնք զարգացրել են «Անգլիական գեղարվեստական նոր ակումբի» (ստեղծվել է 1885—86-ին) հիմնադիրները՝ Ու. Սիքերտը և Ու. Սթիրը:

XX դ. քաղաքների անկանոն աճը, հողատերերի ու սակավահարկ տների առատությունը արվարձաններում, երևան հանեցին քաղաքաշինական բազմաթիվ առաջարկներ. Է. Հոուարդը և Ռ. Անուինը առաջին անգամ հանդես եկան պարտեզ-քաղաքների (Լեչուորդ, սկսվել է 1902-ին) և արբանյակ-քաղաքների նախագծերով, իսկ Պ. Գեդեսն ու Լ. Պ. Աբերքրոմբին առաջ քաշեցին արդ. ամբողջական շրջանների կոմպլեքսային հատակագծման գաղափարը: XX դ. սկզբին, նեոկլասիկայի (Է. Լաչենս) և նեոգոթիկայի (Ջ. Հ. Սքոթ Կրտսեր) ավանդույթները շարունակողների կողքին հանդես են եկել «մոդեռն» ոճի և ռացիոնալիզմի նախաձեռնողները (Չ. Ռ. Մակինտոշ, Չ. Հոլդեն), իսկ 1920—1930-ական թթ.՝ ֆունկցիոնալիստները (Մ. Ֆրայ, Օ. Ուիլյամս): Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո վերակառուցվել են պատերազմի ժամանակ ավերված քաղաքային շրջանները (Քովենթրի քաղաքի կենտրոնը, 1946-ից, ճարտ. Դ. Գիբսոն, Ա. Լինգ, Ս. Պողոս տաճարի շրջանը Լոնդոնում, 1956-ից, ճարտ.

Ու. Հոլֆորդ)։ Մինչև 1960-ական թթ. կե-տերը կիրառվել է միկրոշրջանացման սկզբունքը. կառուցվել են բնակելի հա-մալիրներ (Հոլֆիլդը Լոնդոնում, 1949—



Սկահակ, հախճապա-կի, Ջ. Ուեջվուդի մա-նուֆակտուրա (մոտ 1800, Ուեջվուդի ինս-տիտուտ, Բյորսլեմ)



Ֆ. Բրենգվին. «Սղոցող բանվորներ», օֆորտ (1904)



Բ. Հեփուորթ. «Ալիք» (1943—44, մասնա-վոր հավաքածու, Լոնդոն)

1956, ճարտ. Լ. Դրեյք, Դ. Լեսդեն և ուրիշ-ներ) և արբանյակ-քաղաքներ (1946-ից՝ Հարլոու, Լոնդոնի մոտ, ճարտ. Ֆ. Գի-բերտ և ուրիշներ)։ Ետպատերազմյան շրջանի խոշոր շինություններից են Թագա-վորական համերգային դահլիճը Լոնդո-նում (1949—51, ճարտ. Ռ. Մեթյու, Լ. Մար-տին), Քովենթրիի տաճարը (1954—62, ճարտ. Բ. Սփենս)։ Սակայն արդի ճարտ. զարգացումը արգելակվում է մասնավոր հողատիրության, կապիտալիստական անարխիայի պատճառով. քաղաքների պատմականորեն ձևավորված տեսքը խա-թարում են գրասենյակային բարձրահարկ շենքերը։

XX դ. արվեստում ռեալիստական դի-մանկարային և ժանրային գեղանկարչու-թյան ու գրաֆիկայի ծաղկումը (Օ. Ջոն, Ու. Օրփեն, Ֆ. Բրենգվին, Ս. Փեփլո) զու-գակցվել է նոր առաջացող հոսանքների հետ, որոնք գալիս էին ֆովիզմից (Մ. Սմիթ, Ա. Հիթչենս), ֆուտուրիզմից և կուբիզմից (Ու. Լյուիս), ձգտելով դեպի ֆանտաստիկան (Ս. Սպենսեր, Պ. Սա-զերլենդ, Պ. Նեշ, Ֆ. Բեյքոն) կամ աբստ-րակցիոնիզմը (Բ. Նիքոլսոն, քանդակա-գործ՝ Բ. Հեփուորթ), սյուրռեալիզմն ու աբստրակցիան (քանդակագործ՝ Հ. Մուր)։ 1930-ական թթ. առաջ են եկել իրենց ստեղծագործությունը պրոլետարիատի և հակաֆաշիստական պայքարի հետ կապող նկարիչների խմբեր, 1950-ական թթ. ձևավորվել է «սոցիալական ռեա-լիստների» խումբը։ Գրաֆիկներ Պ. Հո-գարթը, Է. Արդիզոնը, գեղանկարիչներ Լ. Լաուրին, Կ. Ռոն, Դ. Գրիվսը, Պ. դը Ֆրանսիան, քանդակագործներ Լ. Բրեդ-շոն, Բ. Ռին, Բ. Շոցը ստեղծել են մի շարք ռեալիստական գործեր, որոնցից շատերը նվիրված են խաղաղության պայ-քարին, Մ. Բ-ի ժողովրդի, այդ թվում՝ բան-վոր դասակարգի կյանքին։ Հասարակ անգլիացիների կյանքի դժվարին, ծանր կողմերն արտացոլված են Է. Միդլդիչի, Ջ. Սմիթի, Ջ. Բրեթբիի մի շարք նկար-ներում։

Մ. Բ-ի ժող. արվեստը ծաղկում է ապրել XVIIIդ.։ Անգլիայում հնուց տարածված են բրուտագործությունը, փայտի քանդակա-զարդումն ու նախշանկարումը, լուրկնե-րը։ Շոտլանդիան հռչակված է վանդակա-վոր գործվածքներով («տարտան»), կաշ-վե պայուսակներով, դաշույններով, Ուել-սը՝ քանդակազարդ կաղնե կահույքով և վառ ներկված դեկորատիվ խեցեղենով։

**XV. Երաժշտությունը**

Մ. Բ-ի երաժշտության ակունքները կապ-ված են կելտական ցեղերի երաժշտական մշակույթին։ Անգլիայում քրիստոնեու-թյան հաստատումից հետո (VII դ. 2-րդ կես) եկեղեցական ժամերգության մեջ մտած ժող. և կրոնական երաժշտության հիման վրա սկսել է զարգանալ պրոֆե-սիոնալ երաժշտությունը, սկզբում՝ ունի-սոն երգեցողության ձևով, X դարից՝ երկ-ձայն։ XII դ. ժող. երաժշտության ազդե-ցությամբ սկսել է զարգանալ բազմաձայ-նությունը։ Միջին դարերում անգլ. եկեղե-ցական երաժշտության մեջ տիրապետել է կաթոլիկական (գրիգորյան) խորալը։ Լի-թուրգիան ուղեկցվել է երգեհոնի նվագակ-ցությամբ (առաջին երգեհոնը դրվել է Ուինչեստերի տաճարում, X դ.)։ Նորման-դացի նվաճողների ազդեցությամբ Անգ-լիայում զարգացել է մենեստրելների երա-ժշտական-բանաստեղծական արվեստը։ XIV դ. վերջին — XV դ. սկզբին քաղաքա-յին բուրժ. մշակույթի աճի հետ տեղի է ունեցել երաժիշտների պրոֆեսիոնալա-ցում։ Թագավորի արքունիքին կից և խո-շոր ֆեոդալների դղյակներում կազմա-կերպվել են վոկալ և գործիքային կապել-լաներ։ XV դ. 1-ին կեսին սկզբնավորվել է պոլիֆոնիստների անգլ. դպրոցը՝ Ջ. Դանսթեյբլի գլխավորությամբ։ Վերա-ծննդի դարաշրջանում երաժշտությունը կարևոր տեղ է գրավել արիստոկրատիայի և քաղաքաբնակների հասարակական կյանքում և կենցաղում. երևան են եկել կոնսորտներ (տարբեր գործիքներ նվա-գողների խմբերի «ընկերակցություն»), որոնց կատարողների թիվն աստիճանա-բար ավելանալով՝ հասել է 30—40 մարդու (նվագախմբի սկզբնական ձևերը)։ XVI դ. վերջին, լյուտնյայից, վիոլայից և պորտա-տիվից (փոքր երգեհոն) բացի, տարած-վել է վիրջինելը (փոքր կլավեսին)։ Մաս-սայական է դարձել *մադրիգալը*, որի անգլ. ազգային դպրոցի հիմնադիրն է Ու. Բյորդը։ Նրա հետևորդները՝ Ջ. Բուլլը, Օ. Գիբոնսը, ավելի ուշ՝ Ջ. Բլոուն, որոնք արևմտաեվրոպական կլավիրային երա-ժշտության սկիզբն են դրել, գրել են նաև մադրիգալներ և պոլիֆոնիկ երգչախմբա-յին պաշտամունքային երգեր՝ կաթոլիկա-կան մեսսաներ և անգլ. հիմներ։ Աշխար-հիկ բազմաձայնության զարգացման մյուս գիծը Թ. Մոռլիի, Թ. Ուիլքսի և Ջ. Ուիլբիի ստեղծագործություննն է, որոնք, մադրի-գալներից բացի, գրել են «բալետներ» և երաժշտություն՝ Ու. Շեքսպիրի, Ք. Մառ-լոյի և այլոց պիեսների համար։

Ազգային անգլ. երաժշտական թատրո-նի ստեղծողն է XVII դ. խոշորագույն կոմ-պոզիտոր Հ. Պյորսելը («Դիդո և Էնեաս» օպերա)։ Սակայն Մ. Բ-ի օպերային մշա-կույթը կրում էր իտալ. օպերայի ազդե-ցությունը, որից ազատագրվելուն նպաս-տեցին Գ. Ֆ. Հենդելի (Լոնդոնում ապ-րել է շուրջ 50 տարի) օրատորիաներն ու օպերաները։ 1728-ին Լոնդոնում բեմա-դրվել է Ջ. Գեյի և կոմպոզիտոր Ջ. Փե-փուշի «Աղքատների օպերա»-ն, որը սկիզբ դրեց նոր ժանրի՝ երգային մոնտաժի սկզբունքով կառուցված, այսպես կոչված, «բալլադային օպերայի»։ XVIII դ. վերջին Լոնդոնում աշխատում էին Յո. Ք. Բախը («լոնդոնյան» Բախ, Յո. Ս. Բախի որդին), Յո. Հայդնը (այստեղ գրել է 12 «Լոնդոն-յան սիմֆոնիա»), Մ. Կլեմենտին (որը դարձավ անգլ. դաշնամուրային դպրոցի գլխավորը) և ուրիշներ։ Երևան եկան բազ-մաթիվ երաժշտական հիմնարկներ, միու-թյուններ և ընկերություններ՝ բազմաձայն երգեցողության սիրահարների «Քեթչ-քլուբ» (1761), Թագավորական երաժշտ. ընկերություն (1762), կազմակերպվեցին երաժշտ. հրատարակչություններ (1778), հիմնադրվեց ստեղնավոր գործիքների «Ջ. Բրոդվուդ» աշխարհում հնագույն ֆիր-ման (1773-ից արտադրում է ռոյալներ)։ XVIII դ. կեսին ձևավորվել է երաժշտա-գետների անգլ. դպրոցը, որոնցից առավել հայտնի է երաժշտության պատմաբան Չ. Բյոռնին՝ «Երաժշտության համընդհա-նուր պատմության» (հտ. 1776—89) հեղինակը։ XIX դ. Մ. Բ-ի կոմպոզիտոր-ները գլխավորապես աշխատել են օպերա-յին ժանրում (Հ. Բիշոփ, Մ. Բալֆ)։ Լոն-դոնը դարձել է եվրոպական երաժշտ. կենտրոններից մեկը։ 1885-ից անց են կացվել երաժշտ. մեծ փառատոներ։

1822-ին Լոնդոնում բացվել է Երաժշտության թագավորական ակադեմիան, 1872-ին՝ «Տրինիտի կոլեջ»-ը, 1883-ին՝ Թագավորական երաժշտ. կոլեջը: 1878-ին ստեղծվել է ժող. համերգային ընկերությունը: Ազգային կոմպոզիտորական դպրոցը սկզբնավորել է Է. Էլգարը («Հերոնտիոսի երազը», օրատորիա, 1900): Ֆ. Դիլիուսի «Գյուղական Ռոմեոն և Ջուլիետը» օպերայում, Գ. Հոլստի և Հ. Բանտոկի երկերում օգտագործվել են անգլ. ֆոլկլորային մոտիվներ: 1898-ին ֆոլկլորիստ-երաժշտագետ Ս. Շարփը Լոնդոնում հիմնադրել է ժող. երգի ընկերությունը: Անգլ. ազգային դպրոցը («անգլ. երաժշտ. վերածնունդ») գլխավորում էր Ռ. Վոան-Ուիլյամսը:

XX դ. սկզբին Մ. Բ-ի երաժշտ. կյանքը բուռն զարգանում է՝ ընդգրկելով նորանոր քաղաքներ, որոնցում ստեղծվում են երաժշտական դպրոցներ, նվագախմբեր, երգչախմբային ընկերություններ, անց են կացվում փառատոներ և մրցույթներ (Բիրմինգհեմ, Լիդս, Նորիչ, Շեֆֆիլդ և այլուր): Մ. Բ-ի երաժշտ. արվեստում հատուկ տեղ են գրավում Բ. Բրիտտենի միջազգային ճանաչում գտած ստեղծագործությունները: Մ. Բ-ի առաջադեմ երաժիշտները դրսևորում են երաժշտ. արվեստը ժող. զանգվածների պահանջներին մոտեցնելու ձգտում: Դեմոկրատական այդ շարժումը գլխավորում է ազգ. երաժշտ. հասարակական գործիչ, կոմպոզիտոր Ա. *Բուշը*: Մ. Բ-ի երաժշտ. մշակույթի մեջ մեծ ավանդ ունեն երաժշտության պատմաբաններ Ջ. Գրովը («Երաժշտության և երաժիշտների բառարան», 1-ին հրտ. 1879), Պ. Ա. Սքոլսը, Հ. Կ. Քոլեսը և Է. Բլոմը: Կատարողական կոլեկտիվներից աչքի են ընկնում Լոնդոնի ֆիլհարմոնիկ և սիմֆոնիկ նվագախմբերը, Բի-Բի-Սիի սիմֆոնիկ նվագախումբը (գլխ. դիրիժոր՝ Մ. Սարջենտ), Մանչեստրի նվագախումբը, դիրիժորներից՝ Ջ. Բարբիրոլլին, Ա. Ս. Բոուլթը, դաշնակահարներից՝ Ջ. Մուրը, Մ. Լիմպանին, Ջ. Օգդոնը, Ջ. Լիլը, ջութակահար Ա. Կամպոլին, երգիչներից՝ Ռ. Հայդը, Ջ. Մակ-Քորմակը, Պ. Փիրսը, երգչուհիներից՝ Կ. Նովելլոն, Ջ. Վիվիենը, Ջ. Համմոնդը, Կ. Ֆերիրը: Մ. Բ-ի օպերային արվեստի պրոպագանդման համար մեծ նշանակություն ունեցավ «Քովենտ-Գարդեն»-ի գլխավոր դիրիժոր Թ. Բիչեմի գործունեությունը: 1940—50-ական թթ. ամենամյա ավանդական փառատոներ են անցկացվում Էդինբուրգում, Օլդբորոյում, Բաթում, միջազգային երաժշտ. մրցույթներ՝ Լիդսում: 1960-ական թթ. լայն զարգացում ստացավ երաժշտ. էստրադան, այսպես կոչված, «պոպ-երաժշտությունը»: Հատկապես հանրաճանաչ էր երիտասարդ երգիչների «Բիթլզ» (The Beatls) վոկալ-գործիքային քառյակը: Ժամանակակից երաժշտ. ուսումնական հաստատություններից են Երաժշտության թագավորական ակադեմիան և կոլեջը Լոնդոնում, երաժշտ. կոլեջները Մանչեստրում, Լիվերպուլում, Բիրմինգհեմում, Գլազգոյում, Էդինբուրգում և այլ քաղաքներում: Երաժշտագիտություն է դասավանդվում համալսարաններում (Օքսֆորդ, Քեմբրիջ, Բիրմինգհեմ են):

**XVI. Բալետը**

Բեմական ավանդույթները, որոնց հիման վրա ձևավորվել է անգլ. բալետը, սկիզբ են առել XVI դ. դիմակների պալատական ներկայացումներից: Պուրիտանության տարածումը (XVI—XVII դդ.) կասեցրել է բալետային արվեստի ձևավորումը: XVIII—XIX դդ. Լոնդոնում բալետներ են բեմադրել օտարերկրացի բալետմայստերներ Շ. Դիդլոն, Ժ. Պեռոն: 1920—1930-ական թթ. ռուս արտիստների (Ա. Պ. Պավլովա, Ս. Պ. Դյագիլևի խումբ) ազդեցությամբ նորից հետաքրքրություն է արթնացել բալետի նկատմամբ: Ստեղծվել են պարարվեստի խոշոր կոլեկտիվներ՝ «Բալետային ակումբ» (1930, հետագայում՝ «Բալե Ռամբեր»), «Վիկ Ուելս Բալե» (1931, 1942-ից՝ «Սադլերս Ուելս Բալե», 1957-ից՝ Թագավորական բալետ): Անգլ. մնջախաղի ավանդույթներն առանձնապես պարզորոշ երևում են բալետմայստեր Ն. դը Վալուայի վաղ բեմադրություններում, բալետմայստեր Ռ. Հելփմենի ողբերգական ներկայացումներում: Անգլ. բալետի անցումը պարարվեստի մեծ ձևերին իրականացրել է բալետմայստեր Ֆ. Աշթոնը (Հ. Վ. Հենցի «Ունդինա», 1958, Լ. Ֆ. Հերոլդի «Զուր նախազգուշության» նոր խմբագրումը, 1960): Բալետմայստեր Ջ. Կրանկոն 1950-ական թթ. Թագավորական բալետ խմբում բեմադրել է Բ. Բրիտտենի «Եղանակների արքայազնը» բալետը (1957), Կ. Մակմիլլանը՝ Ս. Ս. Պրոկոֆևի «Ռոմեո և Ջուլիետ» բալետի (1965) և Ի. Ֆ. Ստրավինսկու մի շարք բալետների իր խմբագրումները: 1930—60-ական թթ. բալետի առաջատար արտիստներից են Ա. Մարկովան, Ա. Դոլինը, Մ. Ֆոնտեյնը, Մ. Սոմսը, Ս. Բերյոզովան, Ն. Ներինան, Բ. Գրեյը, Ա. Գրանտը, Ա. Լինդենը: Մ. Բ-ում գործում են Թագավորական բալետի (1931-ից), Մարի Ռամբերի (1920-ից), Ն. Լեգատի (1926-ից) դպրոցները: 1920-ից գոյություն ունի Պարի թագավորական ակադեմիան (նախկինում կոչվել է Օպերային պարի ընկերություն):

**XVII. Թատրոնը**

Ինչպես Արևմտյան Եվրոպայի շատ երկրներում, Մ. Բ-ում ևս թատրոնն սկզբում եղել է կրոնական արարողությունների բաղկացուցիչ մասը: Միջնադարյան քաղաքային մշակույթի ծաղկման շրջանում ներկայացումներն ստացել են տոների օրերին տեղի ունեցող համաժող. տոնախմբությունների բնույթ, բեմադրվել են կոլեկտիվ *միստերիաներ*: XV դ. երևան են եկել ինտերլյուդները (ֆրանս. ֆարսին մոտ կոմիկական տեսարաններ) և *մորալիտեները*: Վերածննդի դարաշրջանում սիրողներին վերջնականապես դուրս են մղել պրոֆեսիոնալ դերասանները: Այդ ժամանակաշրջանում բարձր ծաղկման է հասել դրամատուրգիան (Ք. Մառլո, Ու. Շեքսպիր, Բ. Ջոնսոն և ուրիշներ): Ճանաչված դերասաններից էին Է. Ալեյնը (հանդես էր գալիս Մառլոյի պիեսներում) և Ռ. Բյորբեջը (Շեքսպիրի պիեսներում): 1576-ին Լոնդոնում կառուցվել է «Թատրոն» առաջին թատերական շենքը, ապա՝ «Գլոբուսը» (1599), ուր խաղացել է Շեքսպիրի խումբը, «Ֆորտունան» (1600) ևն: Շեքսպիրի ժամանակների թատրոնում դերասանուհիներ չեն եղել, կանանց դերերը կատարել են պատանիները:

Եթե XVI դ. վերջին և XVII դ. սկզբի թատրոնը հիմնականում եղել է ժող. ներկայացում, ապա XVII դ. 20-ական թթ. այն գնալով վերածվել է արիստոկրատական զվարճության: XVII դ. Անգլիական հեղափոխության սկզբին պուրիտանները, իշխանության գլուխ անցնելով, արգելել են թատերական ներկայացումները: Օ. Կրոմվելի պրոտեկտորատի տարիներին միայն արքունիքին կից տրվել են օպերայի տիպի ներկայացումներ: 1860-ին, Ստյուարտների միապետության վերականգնումից հետո, վերսկսվել է արքունիքի հովանավորության և վերահսկողության տակ գտնվող թատրոնների գործունեությունը: Մտցվել է թատերական մոնոպոլիա. ներկայացումների իրավունքի վկայագրեր են ստացել երկու նորաստեղծ խմբեր՝ թագավորի և դուքսի (հետագայում անվանվել են «Դրուրի Լեյն» և «Քովենտ-Գարդեն»): XVII դ. վերջին առաջին անգամ հայտնվել են դերասանուհիներ: XVII դ. վերջին, երբ բուրժուազիան դարձել էր գերիշխող դասակարգի ճանաչված մասը, մտցվել է խիստ գրաքննություն: XVIII դ. թատրոնի ծաղկումը կապված էր լուսավորականության և արվեստի ու գրականության մեջ ռեալիզմի հաստատման հետ: Դարաշրջանի դերասանական արվեստի գագաթը ռեալիստ-դերասան Դ. Գարրիկի ստեղծագործությունն էր, որը 1747—76-ին գլխավորել է «Դրուրի Լեյն» թատրոնը:

XVIII դ. վերջին և XIX դ. սկզբին երևան է եկել կատարման նոր՝ վեհապանծ-խիստ ոճ, որի խոշոր ներկայացուցիչներից էին Ջ. Քեմբլը և նրա քույրը՝ Ս. Սիդոնսը: 1843-ին «Քովենտ-Գարդենի» և «Դրուրի Լեյնի» մոնոպոլիայի վերացումից հետո երևան են եկել նոր թատրոններ: XIX դ. հաստատվել է թատերական շենքի ժամանակակից տիպը, բարելավվել թատերական լուսավորումը, երևան են եկել նկարված դեկորացիաներ, իսկ դարի վերջին՝ դարձիչ շրջանը:

XIX դ. նշանավոր դերասաններից էին Է. Քինը, նրա որդին՝ Չ. Քինը, Ու. Մաքրեդին (նրա խաղընկերուհին էր Է. Տերրին) և ուրիշներ: XIX դ. 2-րդ կեսին դերասան և ռեժիսոր Հ. Իրվինգը ստեղծել է «Լիցեում» թատրոնը, ուր իրականացվել են Շեքսպիրի պիեսների մոնումենտալ բեմադրություններ: Թատրոնը խուսափում էր սաղմնավորվող նոր դրամատուրգիայից, հասարակությունը, սակայն, պահանջում էր սուր պրոբլեմատիկայով հրատապ ներկայացումներ: Այդ պայմաններում 1891-ին քննադատ Ջ. Գրեյնը Լոնդոնում ստեղծել է «Անկախ թատրոն»: Այնուհետև երևան են եկել «Նոր դարի թատրոնը», «Գրական թատրոնի ընկերությունը»: Դեռևս 1818-ին բացված «Օլդ Վիկ» թատրոնի գործունեությունը անգլ. թատերական մշակույթի համար առավել նշանակալի է դարձել 1898-ից, երբ թատրոնը գլխավորում էր Լ. Բեյլիսը: Այս թատրոնների հաջողությունը պայմանավորված էր նոր խաղացանկով, նոր դրամայի ռեալիստական ու նատուրալիստական միտումներին համապատասխանող կատա-

րողական ոճով: Նույն ուղիով էր ընթանում «Քորթ» թատրոնը (բացվել է 1870-ին, 1871-ից՝ «Ռոյալ Քորթ թիեթր»), որը 1904—07-ին գլխավորել է դրամատուրգ և դերասան Հ. Գրենվիլ-Բարքերը: Մշտական թատրոններ են բացվել նաև Մանչեստր (1908), Լիվերպուլ (1911), Բիրմինգհեմ (1913) արդ. քաղաքներում:

XX դ. սկիզբը բեկումնային էր Մ. Բ-ի բեմարվեստում: XVIII—XIX դդ. գերիշխած «աստղ»-դերասանների համակարգին փոխարինել է, Գրենվիլ-Բարքերից սկսած, ներկայացումն անսամբլի սկզբունքով կառուցող ռեժիսուրան:

Առաջին համաշխարհային պատերազմից առաջ Մ. Բ-ի թատրոնն ունեցել է առավելապես ռեալիստական, երբեմն՝ նատուրալիստական ուղղվածություն: Սիմվոլիստական ձևերի որոնումները, որ ձեռնարկել է Է. Գ. Կրեգը, հաճախ կրել են տեսական բնույթ: Ետպատերազմյան տարիներին ռեժիսուրան հարստացել է ռուս. արվեստի փորձով: Մեծ նշանակություն է ունեցել ռուս ռեժիսոր Ֆ. Ֆ. Կոմիսարժևսկու գործունեությունը, որը բնակություն էր հաստատել Մ. Բ-ում: 1920—1930-ական թթ. նշանավորվել են տարբեր ուղղությունների դրամատուրգիայի բեմականացմամբ: Բ. Շոուի, Ջ. Գոլսուորդիի, Ս. Մոեմի, Ֆ. Լոնսդեյլի, Ա. Ա. Միլնի, Ն. Քաուարդի պիեսները բեմադրել են մայրաքաղաքային, գավառական և երկրով մեկ շրջագայող հյուրախաղային խմբերը: 1920-ական թթ. եղել են դերասանուհիներ Ս. Թոռնդայքի և Է. Էվանսի արվեստի ծաղկման շրջանը: 1930-ական թթ. երևան է եկել թատրոնի վարպետների նոր սերունդ՝ Ջ. Գիլգուդ, Լ. Օլիվիե, Ա. Գիննեսս, Ռ. Ռիչարդսոն, Ա. Քւեյլ, Վ. Լի, Բ. Լեման, Ֆ. Ռոբսոն, Պ. Էշկրոֆտ, որոնցից շատերը իրենց գործունեությունը շարունակել են նաև 1960-ական թթ.:

Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ շատ թատրոններ դադարել են գործելուց, սակայն առաջացել են զորամասերը և թիկունքի հիմնարկներն սպասարկող խմբեր: Մ. Բ-ի պատմության մեջ առաջին անգամ կառավարությունը դրամով օժանդակել է թատրոններին: 1940—50-ական թթ. ստեղծվել են առավել կամ պակաս չափով մշտական դերասանական կազմով նոր թատրոններ: 1956-ին Ջ. Դևինը կազմակերպել է «Ինգլիշ սթեյջ քամփընի» խումբը, որը, ինչպես Բ. Մայլսի ստեղծած «Մերմեյդ»-ը (1959), բեմադրել է Մ. Բ-ի և այլ երկրների ժամանակակից առաջադիմական դրամատուրգիան: Երևան են եկել դերասանների նոր անուններ՝ Պ. Սկոֆիլդ, Ռ. Բյորթոն, Կ. Բլում, Պ. Դեյնեմն, Բ. Ջեֆֆորդ, Ջ. Նեյլ, Պ. Ռոջերս, Պ. Օ՛Թուլ: Ետպատերազմյան ժամանակաշրջանը նշանավորվել է համարձակ ստեղծագործական ռեժիսուրայի զարգացմամբ, որի ներկայացուցիչներից են Ջ. Լիթլվուդը, Բ. Մայլսը, Պ. Բրուքը, Պ. Հ. Պոլը, Ջ. Բարթոնը, Կ. Ուիլյամսոնը, Թ. Նաննը և այլք: 1956-ին դերասան Ջ. Օսբոռնի «Զայրացած պահիդ շուրջդ նայիր» պիեսի ներկայացումով սկզբնավորվել է անգլ. թատրոնի նոր վերելքը: Երևան է եկել «բարկացած երիտասարդների» դրամատուրգիան, ապա նաև սոցիալ-կենցաղային նոր դրաման (Ա. Ուեսքեր, Շ. Դիլենի, Բ. Քոփս, Դ. Մերսեր, Ռ. Բոլթ, Բ. Բիեն և ուրիշներ): Անգլ. թատրոնում ևս տեղ են գտել 1950—60-ական թթ. մայրցամաքային Եվրոպայում ստեղծված «փորձարարական» ուղղությունները, մասնավորապես, այսպես կոչված, «աբսուրդի թատրոնը»: Ներկայացուցիչներից էին Ն. Ֆ. Սիմփսոնը, Է. Ջելիկոն, Թ. Սթոպարդը, մասամբ՝ Հ. Փինթերը:

Ժամանակակից Մ. Բ-ում մշտական խմբով և սեփական շենքով թատերական կոլեկտիվները քիչ են: Թատերական շենքերը պատկանում են ձեռնարկատերերին: Թատրոնի առաջավոր գործիչները վաղուց պայքարում են ազգային թատրոն ստեղծելու համար: Այդ գործում առաջին քայլը եղել է XIX դ. 2-րդ կեսին Շեքսպիրյան հուշաթատրոնի ստեղծումը Ստրատֆորդ օն Էյվոնում: 1961-ին թատրոնը վերանվանվել է Թագավորական շեքսպիրյան թատրոն (մասնաճյուղը՝ Լոնդոնում, «Օլդուիչ» թատրոնի շենքում): Առավել կամ պակաս չափով մշտական խմբով մշտապես գործող թատրոններից են (այդ թվում՝ Լոնդոնում, ուր գործում է շուրջ 50 թատրոն)՝ «Օլդ Վիկ» (1963-ից այստեղ խաղում է Ազգային թատրոնի խումբը՝ Լ. Օլիվիեի ղեկավարությամբ), «Ռոյալ Քորթ թիեթր» (1956-ից այստեղ ելույթ է ունենում «Ինգլիշ սթեյջ քամփընին»), «Մերմեյդ թիեթըր», «Ցունիթի» բանվորական (1936-ից), «Ուորքշոփ» ևն: Մի շարք խոշոր քաղաքներում կան խաղացանկային թատրոններ (շուրջ 40), այդ թվում՝ Բրիստոլի «Օլդ Վիկը», «Բելգրեյդ թիեթըր», «Դանդի ռեփերթըրի թիեթըր», «Էդինբուրգ սիվիք թիեթըր» ևն: 1960-ական թթ. վերջին Լոնդոնում ստեղծվել են ավանգարդիստական դրամատուրգիայի հետ կապված փոքր թատրոններ (100—200 տեղով)՝ «Դատարկ տարածություն», «Թատրոնը վերևում», «Նոր գեղարվեստական լաբորատորիա» ևն: Մ. Բ-ի խոշոր թատերական ուսումնական հաստատություններից են՝ Դրամատիկ արվեստի թագավորական ակադեմիան (1904-ից), Բիրմինգհեմի Առողջանության և դրամատիկ արվեստի դպրոցը, Բրիստոլի «Օլդ Վիկի» թատերական դպրոցը, Բրիստոլի համալսարանին առընթեր թատերական ֆակուլտետը ևն:

**XVIII. Կինո**

1896-ին Ռ. Պոլը կազմակերպել է ազգային կինոարտադրությունն սկզբնավորող անգլ. առաջին ֆիլմի ցուցադրումը: 1906-ից ԱՄՆ-ի և Ֆրանսիայի կինոմոնոպոլիաների հետ մրցակցության պատճառով անգլ. կինեմատոգրաֆիայում ընկրավել է ճգնաժամ: 1920-ական թթ. կինոպրոկատի 95%-ը զբաղեցրել են հոլիվուդյան ֆիլմերը: 1927-ին անգլ. հասարակայնության պայքարի շնորհիվ պառլամենտը օրենք է ընդունել ազգային կինեմատոգրաֆիան սատարելու մասին: Թողարկվել են, գլխավորապես, հանրաճանաչ պիեսների, երաժշտ. ներկայացումների էկրանավորումներ: 1929-ին ստեղծվել է առաջին հնչուն ֆիլմը («Շանտաժ», ռեժ.՝ Ա. Հիչքոք, ըստ Չ. Բենթոնի պիեսի): 1932-ին ռեժիսոր Ա. Կորդան հիմնել է «Լոնդոն ֆիլմս» ֆիրման, ուր աշխատել են օտարերկրացի մի շարք կինոգործիչներ (Ռ. Կլեր, Ժ. Ֆեյդեր, Կ. Ֆեյդտ, Ռ. Մատե, Ժ. Պերինալ), անգլիացի դերասաններ (Չ. Լոթոն, Ռ. Դոնաթ, Վ. Լի, Լ. Հոուարդ, Լ. Օլիվիե): Ֆիրմայի լավագույն ֆիլմերից են՝ «Ուրվականը մեկնում է արևմուտք» (1935, ռեժ.՝ Ռ. Կլեր), «Ռեմբրանդ» (1936, ռեժ.՝ Ա. Կորդա), «Գալիքի նկարագիրը» (1936, ռեժ.՝ Ու. Կ. Մենզիս, ըստ Հ. Ուելսի վեպի): Մեծ ճանաչում են գտել Ա. Հիչքոքի դետեկտիվ ֆիլմերը: 1930-ական թթ. ձևավորվել է անգլ. ռեժիսորներ Ա. Ասքվիթի և Կ. Ռիդի արվեստը: Ազգային կինոարվեստում կարևոր դեր են խաղացել Ջ. Գրիրսոնի ղեկավարությամբ աշխատող վավերագրող ռեժիսորները, որոնց ըստ ժանրի և թեմատիկայի բազմազան ֆիլմերը ռեալիստորեն պատկերել են Մ. Բ-ի կյանքը, աչքի ընկել նոր արտահայտչամիջոցների որոնումներով: Գեղարվեստավավերագրական «Որի մեջ աշխատում ենք» (1942), «Սան Դեմետրիո-Լոնդոն» (1943) ֆիլմերը մեծ ճանաչում են բերել ռեժիսորներ Ն. Կոուարդին, Դ. Լինին, Չ. Ֆրենդին: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ֆիլմերի արտադրությունը նորից կրճատվել է: Չնայած Դ. Լինի («Կարճ հանդիպում», 1945, «Մեծ սպասումներ», 1946), Կ. Ռիդի («Խաղից դուրս մնացածը», 1947, «Անկյալ կուռքը», 1948, «Երրորդ մարդը», 1949) և Լ. Օլիվիեի («Հենրիխ V», 1944, «Համլետ», 1948, ըստ Շեքսպիրի) լավագույն ֆիլմերի հաջողությանը, անգլ. կինեմատոգրաֆիան կրկին ճգնաժամ է ապրել: 1950-ական թթ. անգլ. կինոյի ռեալիստական ավանդույթները վերածնվել են ռեժիսորներ Հ. Կոռնելիուսի («Ժենեվիվա», 1952), Ա. Մակքենդրիկի («Սպիտակ զգեստով մարդը», 1952), Բոուլթինգ եղբայրների («Կարլթոն Բրաունը դիվանագետ», 1959) կինոնկատակերգություններում և «Ազատ կինո» խմբի վավերագրող ռեժիսորների գործունեության մեջ («Ո՜հ, երազների երկիր», 1954, «Մայրիկը թույլ չի տալիս», 1956, «Ռազմերթ դեպի Օլդերմասթոն», 1958): 1950-ական թթ. վերջին երևան են եկել բուրժ. պարելակերպի հարուցած հիասթափությունն արտացոլող ֆիլմեր («Ճանապարհ դեպի բարձր հասարակություն», 1958, ռեժ. Ջ. Քլեյթոն, ըստ Ջ. Բրեյնի): 1960-ական թթ. կեսից անգլ. կինեմատոգրաֆիան ավելի ու ավելի է կորցրել իր անկախությունը Հոլիվուդի տնտ. էքսպանսիայի պատճառով (1969-ին թողարկվել է 84 գեղարվեստական ֆիլմ, որից 70-ը՝ ԱՄՆ-ի միջոցներով): Սոցիալական նշանակալի պրոբլեմներ են շոշափում Պ. Ուոթքինսի («Պատերազմ ենք խաղում», «Առանձնաշնորհում», երկուսն էլ՝ 1967), Լ. Անդերսոնի («Եթե ...», 1968) և այլոց ֆիլմերը: Լավագույն դերասաններից են Լ. Օլիվիեն, Մ. Ռեդգրևը, Ա. Գիննեսը, Ռ. Բոգարդը, Ռ. Հարիսը, Ա. Ֆիննին, Պ. Ֆինչը, Վ. Ռեդգրևը, Ռ. Թաշինգեմը: Լոնդոնում գործում է Բրիտանական կինոինստ-ը (հիմնվել է 1933-ին)՝ կինոյի բնագավառում գիտահետազոտական և պրոպագանդիստական աշխատանքի կենտրոնը: Ամենամյա կինոփառատոններ են անցկացվում Էդինբուրգում և Լոնդոնում:

**XIX. Հայերը Մեծ Բրիտանիայում**

Հայկ. պատմական աղբյուրներում Բրիտանիան հիշվում է դեռևս VII դ., Անանիա Շիրակացու «Աշխարհացոյց»-ում: Ենթադրվում է, որ այդ ժամանակից էլ հայերը ծանոթ են բրիտների երկրին: Հայերն ու անգլիացիները ի մոտո առնչվել են XIII—XIV դդ. խաչակրաց արշավանքների ժամանակ, Կիլիկյան Հայաստանում: Հայ-անգլ. հարաբերություններն աշխուժացել են XVI—XVIII դդ., երբ անգլիացիները մուտք են գործել Հնդկաստան, որտեղ կային հայ համայնքներ: Անգլ. առևտրական ընկերություններն օգտվել են հնդկահայ վաճառականների ծառայություններից, նրանց արտոնել ազատ առևտուր անգլ. բոլոր առևտրակայաններում: Անգլ. նավերով հայ վաճառականներն Անգլիա են տարել մետաքս, արլ. համեմունքներ և այլ ապրանքներ:

Մ. Բ-ում առաջին հայ համայնքները ստեղծվել են XIX դ. 30-ական թթ., երբ պոլսեցի հայ վաճառականներից նախ իրենց առևտրական գրասենյակներն ու գործակալություններն են հիմնել Լոնդոնում, Մանչեստրում, իսկ ապա հիմնական բնակություն հաստատել: 1870-ին Մանչեստրում կառուցվել է առաջին հայկ. եկեղեցին (Ս. Երրորդություն): Մ. Բ-ում հայերի թիվն ավելացել է առաջին համաշխարհային պատերազմից հետո, երբ այստեղ են հաստատվել Թուրքիայից, Իրանից, Կովկասից, Հնդկաստանից գաղթած հայեր: 1919-ին Լոնդոնում բնակվում էր 300 հայ, որտեղ 1923-ին կառուցվեց երկրորդ հայկ. եկեղեցին (Ս. Սարգիս): Մ. Բ-ի հայ գաղութը ստվարացել է երկրորդ համաշխարհային պատերազմից հետո (1946-ին՝ 2 հզ., 1977-ին՝ 7 հզ. հայ): 1981-ին Մ. Բ-ում բնակվում էր շուրջ 15 հզ. հայ (հիմնականում՝ Լոնդոնում, ինչպես նաև Մանչեստրում, Լիվերպուլում և այլուր): Հայերը հիմնականում ծառայողներ են, բանվորներ, արհեստավորներ ու մանր առևտրականներ, կան մեծահարուստներ ու խոշոր արդյունաբերողներ, ինչպես նաև մտավորականներ (գիտնական, բժիշկ, արվեստագետ ևն): Գաղութը ղեկավարում է Համայնքային վարչությունը: Գործում են հայկ. մեկ դպրոց, տպարան, երեք եկեղեցի, բարեգործական (1907-ից՝ ՀԲԸՄ մասնաճյուղը), մշակութային միություններ ու կազմակերպություններ: Համայնքի մշակութային կյանքի կենտրոնը Լոնդոնի Հայ տունն է (1962-ից), որն ունի գրադարան, կազմակերպում է դասախոսություններ, համերգներ, տոնական հանդիսություններ նվիրված հայ մշակույթին ու նրա գործիչներին, ցուցադրում հայկ. կինոնկարներ ևն:

Մ. Բ-ի հայ գաղութը թեև փոքրաթիվ է եղել, բայց ունեցել է հետաքրքիր մշակութային, հասարակական կյանք: 1736-ին Լոնդոնում լատիներեն թարգմանությամբ հրատարակվել են Մովսես Խորենացու «Հայոց պատմությունը» և Անանիա Շիրակացու «Աշխարհացոյցը»: 1780-ին Գրիգոր Խալդարյանը Լոնդոնում հիմնել է հայկ. տպարան (1781-ին տեղափոխել է Պետերբուրգ), Վուլվիչի ռազմ. ակադեմիայում է սովորել XVIII դ. հայ ազգային-ազատագրական շարժման գործիչ Հովսեփ Էմինը: XIX դ. 70-ական թթ., 1877—1878-ի ռուս-թուրք. պատերազմից հետո, Բեռլինի կոնգրեսի նախօրյակին, Լոնդոնի և Մանչեստրի հայերը անգլիացիներին հայ ժողովրդի պատմությանը ծանոթացնելու նպատակով կազմակերպել են դասախոսություններ, հանդիպումներ անգլ. քաղ. գործիչների հետ, Հայկական հարցի դրական լուծման գործին ներգրավել Ջ. *Բրայսին*, Վ. *Գլադստոնին* և այլոց: 1888-ին հիմնվել է «Հայ հայրենասիրաց ընկերությունը», որը հրատարակել է «Հայաստան» (հայերեն և ֆրանս.) շաբաթաթերթը (1888—92): Լոնդոնում հաստատված հնչակյանները 1892-ին հայերեն տպագրել են Գ. Վ. Պլեխանովի «Մայիսի մեկը ամենամյա համաշխարհային տոն բանվորների» գիրքը, 1894-ին հրատարակել են «Հնչակ», «Ապտակ», «Գաղափար» թերթերը (ընդհանրապես Մ. Բ-ում լույս է տեսել շուրջ 12 հայերեն պարբերական):

Ներկայումս (1981) Մ. Բ-ում գրական-մշակութային գործունեություն են ծավալում թարգմանիչ Միքայել Գյուտյանը (որը 1974-ին անգլ. հրատարակեց «Հայ պոեզիայի անթոլոգիա» գիրքը), ջութակահարներ Մանուկ Բարիքյանը, Լևոն Չիլինկիրյանը, դիրիժոր Լոռիս Ճգնավորյանը, դաշնակահարուհի Ելենա Գյուտյանը և ուրիշներ: Լոնդոնի համալսարանում գործում է հայագիտական բաժին (դասախոսներ՝ Դ. Լանգ, Չ. Դաուսեթ): Սերտ են Մ. Բ-ի հայ համայնքի կապերը Սովետական Հայաստանի հետ:

*Պ. Մարտիրոսյան*

*Գրկ.* Մարքս Կ. և Էնգելս Ֆ., Անգլիայի մասին, Ե., 1953: Էնգելս Ֆ., Բանվոր դասակարգի դրությունն Անգլիայում, Ե., 1934: Լենին Վ. Ի., Երկ., հ. 18, էջ 337—39, 456—64, 592—94, 692—93, հ. 33, էջ 209—10, հ. 20, էջ 174—78, հ. 21, էջ 325—33, հ. 17, էջ 200—07, հ. 19, էջ 327—30, 42—43, հ. 15, էջ 252—56: Стамп Д. и Бивер С., Британские острова, пер. с англ., М., 1948; Добрынин Б. Ф., Физическая география Западной Европы, М., 1948; Добров А. С., Великобритания, М., 1955; Экономика и политика Англии после второй мировой войны, М., 1958; Волков М. Я., Промышленность Англии, М., 1965; Экономическая география капиталистических стран Европы, М., 1966; Солодкин Р. Г., Англия на мировых рынках, М., 1969; Конституции буржуазных государств Европы, М., 1957; с. 163—333; Харвей Д. и Худ К., Британское государство, пер. с англ., М., 1961; Мортон А. Л., История Англии, пер. с англ., М., 1950; Тревельян Дж. М., Социальная история Англии, пер. с англ., М., 1959; Петрушевский Д. М., Очерки из истории английского государства и общества в средние века, 4 изд., М., 1937; Гутнова Е. В., Возникновение английского парламента, М., 1960; Татаринова К. Н., Очерки по истории Англии (1640—1815), М., 1958; Ерофеев Н. А., Очерки по истории Англии (1815—1917), М., 1959; Английская буржуазная революция XVII в., под ред. Е. А. Косминского и Я. А. Левицкого, т. 1—2, М., 1954; Ротштейн Ф. А., Очерки по истории рабочего движения в Англии, 2 изд., М.—Л., 1925; Поллит Г., Марксизм и рабочее движение в Великобритании, [пер. с англ.], М., 1960; Трухановский В. Г., Новейшая история Англии, М., 1958; Жигалов И. И., Великобритания: народ и внешняя политика, М., 1967; История философии, т. 1—6, М., 1959—65 (т. 1, с. 290—93, 322—23, 361—82, 422—52; т. 3, с. 424—69; т. 5, с. 567—98; т. 6, кн. 2); Богомолов А. С., Англо-американская буржуазная философия эпохи империализма, М., 1964; Вайнштейн О. Л., Западноевропейская средневековая историография, М.—Л., 1964, с. 158—68, 202—08, 221—22, 420—56; Виноградов К. Б., Очерки английской историографии нового и новейшего времени, Л., 1959; Селигмен Б., Основные течения современной экономической мысли, пер. с англ., М., 1968; История английской литературы, т. 1—3, М.—Л., 1943—58; Жантиева Д. Г., Английский роман XX века. 1918—1939, М., 1965; Ивашева В. В., Английская литература. XX век, М., 1967; Аллен У., Традиция и мечта, М., 1970; Мортон А., От Мэлори до Элиота, М., 1970; Виппер Б. Р., Английское искусство. Краткий исторический очерк, М., 1945; Иконников А. В., Современная архитектура Англии. Планировка городов и жилищное строительство, Л., 1958; Материалы и документы по истории музыки, пер. с нем., франц., итал., англ. яз., под ред. М. В. Иванова-Борецкого, т. 2, М., 1934; Шнеерсон Г. М., Современная английская музыка, М., 1943; История западноевропейского театра, т. 1—4, М., 1956—64; Аникст А., Театр эпохи Шекспира, [М., 1965]; Кино Великобритании, М., 1970; The Oxford History of England, ed. by G. N. Clark, 2 ed., v. 1—15, Oxf., 1937—1965; Briggs M., Jordan P., Economic History of England, [9 ed.], L., 1960; The Ballet in Britain, ed. by P. Brinson, L., 1962.

**ՄԵԾ ԲՐԻՏԱՆԻԱՅԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆ (ՄԲԿԿ),** հիմնվել է 1920-ի հուլիս-օգոստոսին՝ Լոնդոնի հիմնադիր համագումարում՝ Բրիտանական սոցիալիստական կուսակցության ձախ թևի, Հարավային Ուելսի սոցիալիստական կազմակերպությունների և տեղական սոցիալիստական կազմակերպությունների միավորմամբ: 1920-ին մտել է Կոմինտերնի մեջ: 1921-ին կուսակցության շարքերը համալրեցին ֆաբրիկա-գործարանային ավագների հեղափոխական շարժման ներկայացուցիչներ՝ Ու. *Գալլախերի* գլխավորությամբ: Կուսակցությունը ղեկավարել է ամբողջ երկրում ծավալված «Ձեռքներդ հեռու Սովետական Ռուսաստանից» շարժումը, պայքարել միացյալ բանվորական ճակատի ստեղծման համար՝ ընդդեմ լեյբորիստական վերնախավի հակաբանվորական քաղաքականության: 1926-ի համընդհանուր գործադուլի ժամանակ կոմունիստները հանդես եկան որպես բանվոր դասակարգի արմատական շահերի պաշտպանության անձնուրաց մարտիկներ: 1920-ական թթ. վերջին կոմկուսը մեծ ուշադրություն էր դարձնում իր շարքերի ամրապնդմանը՝ պայքար մղելով աջ և ձախ ռևիզիոնիստական տարրերի դեմ: Բանվոր դասակարգի միասնության համար պայքարում մեծ դեր կատարեց ՄԲԿԿ XI համագումարը (1929): Կոմկուսի գլխավոր քարտուղար ընտրվեց Հ. *Պոլիտը:* Համաշխարհային տնտ. ճգնաժամի (1929-33) շրջանում կոմկուսը կազմակերպել է բանվոր դասակարգի դիմադրությունը բուրժուազիայի հար-

ճակումների դեմ: 1930-ական թթ. սկզբին կոմունիստները կազմակերպեցին գործազուրկների վիթխարի «սովյալ երթերը»: 1934—36-ին կոմունիստների ղեկավարությամբ տեղի ունեցան մասսայական միտինգներ ու բողոքի ցույցեր ընդդեմ ֆաշիստական կազմակերպության: Ավելի քան 400 անգլիացի կոմունիստներ ինտերնացիոնալիստական բրիգադներում մարտնչեցին Իսպանիայի հայրենասերների կողքին: Այս շրջանում կուսակցությունը պայքարում էր անգլ. կառավարության՝ ֆաշիստական ագրեսորների թողտվության քաղաքականության դեմ, ՍՍՀՄ-ի հետ բարեկամության, երկրում միացյալ հակաֆաշիստական ճակատի ստեղծման համար: Երկրորդ համաշխարհային պատերազմի (1939—45) ժամանակ ֆաշիզմի դեմ կոմունիստների անձնազոհ պայքարը բարձրացրեց նրանց հեղինակությունը մասսաների շրջանում: 1947-ին կոմկուսը առաջադրեց բրիտ. էկոնոմիկայի զարգացման եռամյա պլան՝ առաջարկելով վերացնել մոնոպոլիաների ճնշող տիրապետությունը, իրականացնել ժող. տնտեսության կարևորագույն ճյուղերի ազգայնացում և տեխ. վերակառուցում: 1951-ին Գործադիր կոմիտեն ընդունեց «Բրիտանիայի ուղին դեպի սոցիալիզմ» ծրագիրը [հավանության է արժանացել կուսակցության XXII համագումարում (1952), իսկ XXV համագումարում (1957) հաստատվեց փոփոխված ծրագրի նախագիծը, XXX-ում (1967) ծրագրում մտցվեցին նոր փոփոխություններ ու լրացումներ]: Ծրագրում նշվում է, որ Մեծ Բրիտանիայի արտաքին քաղաքականությունը պետք է կառուցվի բոլոր երկրների հետ խաղաղության ու բարեկամության սկզբունքների հիման վրա: Կոմկուսը հնարավոր է համարում անցումը սոցիալիզմին՝ առանց զինված պայքարի, պառլամենտի վերափոխման ճանապարհով, այն դարձնելով բանվոր դասակարգի ղեկավարությամբ միավորված աշխատավորության գործիք երկրի կառավարող շրջանների հակաժողովրդական քաղաքականության դեմ պայքարելու համար: Իբրև իր հիմնական խնդիրներից մեկը, կուսակցությունը առաջ է քաշում ձախ ուժերի միասնությունը, որով հնարավոր կդառնա վերացնելու աջ թևի գերիշխանությունը բանվորական շարժման մեջ: ՄԲԿԿ XXXIV համագումարը (1975) կոչ արեց հասարակական տարբեր ուժերը բանվոր դասակարգի ղեկավարությամբ համախմբել լայն, հակամոնոպոլիստական միության մեջ:

Համագումարը հատուկ ուշադրություն դարձրեց արդյունաբերական ձեռնարկություններում կոմունիստների գործունեության ակտիվացմանը: XXXV համագումարը (1977) հավանություն տվեց «Բրիտանիայի ուղին դեպի սոցիալիզմ» կուսակցության նոր ծրագրին, կոչ արեց մոբիլիզացնել երկրի առաջադիմական ուժերի ջանքերը հանուն աշխատավորների շահերի պաշտպանության, սպառազինությունների մրցավազքի դադարեցման և զինաթափման:

ՄԲԿԿ կառուցված է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքով: Կուսակցության բարձրագույն մարմինը համագումարն է, որն ընտրում է Գործադիր կոմիտե: Կոմկուսի շարքերում կա 20,6 հզ. կոմունիստ (1980): Կուսակցության գլխավոր քարտուղարն է Գ. *Մակլեննանը*: Կենտրոնական օրգանն է «Քոմենթ» («Comment») շաբաթաթերթը, տեսականը՝ «Մարքսիզմ թուդեյ» («Marxism Today») ամսագիրը:

**ՄԵԾ ԳՈՆԴՈՒՐԱ**, հայաբնակ գյուղ Վրացական ՍՍՀ Բոգդանովկայի շրջանում, շրջկենտրոնից 10 *կմ* հյուսիս-արևմուտք: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև կարտոֆիլի, հացահատիկային և կերային կուլտուրաների, բանջարեղենի մշակությամբ: Գործում է Բոգդանովկայի պանրի գործարանի մասնաճյուղը: Ունի միջնակարգ դպրոց, 2 գրադարան, ակումբ, կինոսրահ, մանկապարտեզ: Բնակիչների նախնիները եկել են Էրզրումի նահանգից, 1829-ին: Մ. Գ-ում կա եկեղեցի (1869):

**ՄԵԾ ԴԱՏԱՎԱՐՈՒԹՅՈՒՆ**, դատավարական գերագույն մարմին միջնադարյան Հայաստանում: Պաշտպանել է տիրող դասակարգի շահերն ու իրավունքները: Գլխավոր դատավորը եղել է Հայոց կաթողիկոսը, որը ժողովների միջոցով սահմանել է կանոններ ու օրենքներ, հետևել դրանց կատարմանը: Տեղական դատարանները գլխավորել են թեմական եպիսկոպոսները: Կիլիկյան Հայաստանում հոգևորականությունը զրկվել է դատավարության իրավունքից: Գործել է թագավորի ձեռքում կենտրոնացված աշխարհիկ դատարանը:

**ՄԵԾ ԴՈՒԽՌՆՈՒԿ**, Դուռնիկ, հայաբնակ գյուղ Վրացական ՍՍՀ Թեթրիծղարոյի շրջանում, Թբիլիսի—Մառնեուլի—Թեթրիծղարո խճուղու աջ կողմում, շրջկենտրոնից 22 *կմ* հյուսիս-արևելք: Կաթնաանասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև բանջարաբոստանային կուլտուրաների մշակությամբ ու այգեգործությամբ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, կենցաղսպասարկման օբյեկտներ, փոստ, բուժկայան: Մ. Դ. հիմնադրվել է 1750-ին: Բնակիչները եկել են Ղարաբաղից և Վրաստանի Կախեթի գավառի Թելավ քաղաքից: Գյուղում կա 2 եկեղեցի Ս. Գևորգ անվամբ, մեկը՝ կառուցված 1780-ին, մյուսը՝ XIX դ.: Մ. Դ-ի շրջակայքում պահպանվել են հին գյուղատեղիներ, գերեզմանատներ և մատուռներ: *Վ. Մաղալյան*

**ՄԵԾ ԵՂԵՌՆ**, Մեծ ոճիր, Հայերի ցեղասպանություն (ցեղասպանություն), արևմտահայության զանգվածային կոտորած Օսմանյան կայսրությունում 1914—18-ի առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ: Կազմակերպել են թուրք. կառավարողները՝ կայզերական Գերմանիայի աջակցությամբ և արևմտյան տերությունների թողտվությամբ:

Միջին դարերի մեծագույն արհավիրքներից էր սելջուկ-թուրքերի ներխուժումը Հայաստան և Փոքր Ասիա: Նրանց ավերիչ հարձակումներով սկսվեց հայ ժողովրդի պատմության ամենամռայլ ժամանակաշրջանը: Նրանք սկզբում «հիմնեցին Կարահիսարի ավազակային պետությունը» (Архив К. Маркса и Ф. Энгельса, т. 5, с. 223), իսկ հետագայում կազմավորվեց Օսմանյան կայսրությունը՝ այդ «իսկական ռազմական տերությունը» (նույն տեղում, т. 6, с. 189): Այնտեղ դժոխային վիճակ ստեղծվեց բոլոր աշխատավորների և քրիստոնյա ժողովուրդների (սլավոններ, հայեր, հույներ, վրացիներ ևն) համար: Ռազմա-ֆեոդալ. Թուրքիայում չկար օրինականություն, իշխում էին սուլթանի և նրա փաշաների կամքն ու քմահաճույքը, շարիաթն ու Ղուրանի հետադիմական դոգմաները: Թուրք. բռնակալներն աշխարհի ժողովուրդներին բաժանում էին երկու մասի՝ «հավատացյալների» (մահմեդականների), որոնք պետք է իշխեն, և այլակրոնների կամ «գյավուրների», որոնց պետք է աշխատեցնել, զանկոծել, սպանել: Նրանք ճնշում էին նաև մահմեդական աշխատավորներին, բայց հատկապես ծանր էր ոչ-մահմեդական թուրքահպատակների վիճակը. նրանք դատապարտված էին ստրկության, ձուլման (դավանափոխությամբ) կամ ոչնչացման: Դաժան ճնշման ու շահագործման, կատաղի շովինիզմի, կրոնական մոլեռանդության, անօրինականության, ոստիկանական կամայականության պայմաններում չկար անձի ու գույքի տարրական ապահովություն:

Թուրք. բռնակալները, հրով ու սրով նվաճելով Արևմտյան Հայաստանը, հայերի նկատմամբ սկզբից ևեթ վարել են պետ. քաղաքականության աստիճանի բարձրացրած բարբարոսական գիծ, որն ահավոր չափերի հասավ արյունարբու սուլթան *Աբդուլ Համիդ II*-ի օրոք (1876—1909): Էրզրումում անգլ. հյուպատոս Քլիֆորդ Լլոյդը նշել է, որ «սուլթանի հայ հպատակները տառացիորեն անպաշտպան են, ինչպես գայլերով շրջապատված ոչխարի հոտը» («Положение армян в Турции до вмешательства держав в 1895 году», М., 1896, с. 133): Համիդյան տիրապետությունը «*զուլումի*» ժամանակաշրջան էր, երբ «թագակիր ավազակը» պահանջում էր «վերջ տալ Հայկական հարցին՝ ոչնչացնելով բոլոր հայերին»: Նա 1894—96-ին կազմակերպեց ավելի քան 300 հզ. հայերի կոտորածը: 1908-ի բուրժուա-վերնախավային հեղափոխությամբ տապալվեց Աբդուլ Համիդը, և իշխանության գլուխ անցան *երիտթուրքերը*, որոնք միավորված էին «Միություն և առաջադիմություն» («Իթթիհաթ վե թերաքքը») կոչվող կուսակցության մեջ: Բայց ըստ էության ոչ մի էական փոփոխություն տեղի չունեցավ երկրի սոցիալ-տնտ. կյանքում ու հասարակական հարաբերություններում: Իթթիհաթականները, դավանելով *պանթյուրքիզմի* ու *պանիսլամիզմի* հետադիմական գաղափարախոսությունը, ձգտում էին ոչ միայն պահպանել Օսմանյան կայսրությունը և բռնությամբ ոչնչացնել կամ ձուլել-թուրքացնել հպատակ ժողովուրդներին, այլև ստեղծել համաթուրանական տերություն, որի մեջ կմտնեին բոլոր մահմեդականները: Երկրի ներսում նրանք սաստկացրին մեծապետական շովինիզմի քաղաքականությունը և կատաղի հալածանքը հայերի ու մյուս հպատակ ժողովուրդների դեմ: Ակադեմիկոս Ե. Տառ-

լեն նշել է, որ երիտթուրքերը իշխանության գլուխ անցան այն հաստատ համոզմամբ, որ «ազգային հարցերը կլուծեն բոլոր ազգությունների ֆիզիկական ոչնչացմամբ, բացի թուրքերից և նրանցից, ովքեր կհամաձայնվեն անհապաղ դառնալ թուրք»: Նրանք հայտարարեցին, որ Օսմանյան կայսրությունում այլևս «չկան» հայ, հույն, արաբ ևն, որ այնտեղ ապրող բոլոր ազգությունները «օտտոմաններ են» և պետք է դառնան թուրքեր, հակառակ դեպքում «մենք նրանց կկոտորենք» (Соч., т. 5, 1958, с. 199): Այդպիսի պաշտոնական դիրքորոշում տվեց իթթիհաթականների 1911-ի հոկտեմբերին Սալոնիկում տեղի ունեցած համագումարը, որն անցավ համաթուրանական շովինիզմի մթնոլորտում: Երիտթուրքերի պարագլուխներից դոկտոր Նազըմը մասնավորապես ասաց. «Մի մոռանաք, որ մեր նախահայրերը Թուրանեն եկած են ու այսօր Անդրկովկասի, ինչպես Կասպից ծովեն դեպի արևելք տարածվող ընդարձակ հողամասերուն վրա թուրք ցեղեր կապրին, գրեթե միատարր, ավա՜ղ, մեր դարավոր թշնամի Ռուսաստանի լուծին տակ: Մեր քաղաքական հորիզոնը բաց կմնա այդ ուղղությամբ միայն ու մեզի կմնա սրբազան պարտք մը իրականացնելու թուրք ցեղին միությունը Միջերկրականեն մինչև Արալ ծովը... Այդ քաղաքական ծրագրին իրականացման նախապայմանը՝ Հայկական հարցի արմատական լուծումն է... Պետք է բնաջնջել հայերը մեր կայսրության մեջ» («Արարատ», 1963, № 6542, 6543): Ընդհանրացնելով այդ վանդալական ծրագիրը՝ համագումարը որոշեց. «Վաղ թե ուշ պետք է իրագործվի Թուրքիայի բոլոր հպատակների օտտոմանացումը, բայց մի բան պարզ է, որ դա երբեք չի կատարվի համոզելով, այլ պետք է իրականացվի զենքի ուժով» (L e p s i u s J., Der Todesgang des Armenischen Volkes, Potsdam, 1930, S. 222):

Այդ ծրագիրը դրվեց գործողության մեջ և ունեցավ ծանր հետևանքներ Թուրքիայի *ճնշված ժողովուրդների համար*: Բոլշևիկները նշել են, որ երիտթուրքերը մի կողմից՝ «դրսևորեցին լիբերալ բուրժուազիայի ողջ արատավորությունն ու թուլությունը, իսկ մյուս կողմից՝ իշխանության գլուխ անցած ռազմաասպայական կաստայի ողջ դեսպոտիզմը», որ նրանց ձգտումը թուրքացնելու սլավոններին, հայերին ու մյուսներին «ընդունեց ավելի կոպիտ ու հարկադրական բնույթ, քան Աբդուլ Համիդի ժամանակ» («Правда», № 76,27.07.1912):

Երիտթուրքերը հատկապես կատաղած էին հայերի դեմ, որոնք ոգևորված սուլթան Աբդուլ Համիդի տապալմամբ, պատրանքներ էին տածում իրենց դրության բարելավման վերաբերյալ: Եվ ահա նրանք կազմակերպեցին «Կիլիկիայի գիշերը». 1909 թվականին Ադանայում ու նրա շրջակայքում գազանաբար սպանվեցին 30 000 հայեր (տես *Ադանայի կոտորած 1909*): Ըստ էության դա Մեծ եղեռնի սկիզբն էր և երիտթուրքերը տենդորեն նախապատրաստվում էին հիմնովին բնաջնջելու հայ ժողովրդին: Թուրք փաշաներն ու քուրդ բեգերը, նրանց հրոսակախմբերը շարունակ ավազակային հարձակումներ էին գործում հայկ. նահանգների բնակչության վրա, ավերում ու կողոպտում նրանց տները, սպանում անմեղ մարդկանց, անարգում կանանց ու աղջիկներին և այդ ամենի համար արժանանում իշխանությունների գովասանքին ու պարգևներին: Այդպիսի ոճրալից ասպատակությունները լայն չափերի հասան 1912—14-ին, երբ վերաբացվեց *Հայկական հարցը*, որն ավելի զայրացրեց թուրք. կառավարողներին ու նրանց գերմ. հովանավորներին: Էրզրումում ռուս. հյուպատոս Ադամովը 1913-ի դեկտ. 29-ի և 1914-ի հունվ. 5-ի հեռագրերում նշել է, որ «երիտթուրքերը» գերմ. հյուպատոս Է. Անդերսի նախաձեռնությամբ հավաքագրում են խուլիգանների ու այլ հանցագործների, կազմակերպում հրաձգության վարժություններ ու նախապատրաստվում հայերի դեմ հարձակման. «Տեղեկությունների համաձայն,— գրել է Ադամովը,— ամեն ինչ պատրաստ է կոտորածի համար և սպասում են միայն ազդանշանի՝ մայրաքաղաքից» («Сборник дипломатических документов. Реформы в Армении, 26 ноября 1912 г. —10 мая 1914 г.», Петроград, 1915, с. 4): Այդպիսի ազդանշան տրվեց, երբ բռնկվեց առաջին համաշխարհային պատերազմը և երիտթուրքերը գերմ. ռազմամոլների հետ միասին դրությունը համարեցին բարենպաստ՝ իրականացնելու հայերի բնաջնջման դիվային ծրագիրը: Այն հիմնականում մշակվել էր նախօրոք, իսկ պատերազմի ժամանակ կոնկրետացվեց ու իրագործվեց: Այդ է վկայում նաև թուրք. կառավարության 1915-ի հրահանգներից մեկը (ուղղված նահանգապետներին), որտեղ ասված է. «Թեև հայկական տարրի ոչնչացման հարցը... վաղուց էր վճռված, հանգամանքները թույլ չեն տվել իրականացնել այդ սրբազան գործը: Ներկայումս, երբ բոլոր խոչընդոտները վերացված են և վրա է հասել մեր հայրենիքը այդ վտանգավոր տարրից ազատելու ժամանակը, հաստատակամորեն հանձնարարվում է չենթարկվել խղճի խայթին՝ նրանց թշվառ դրությունը տեսնելով, այլ ոչնչացնել բոլորին և ամեն կերպ ձգտել վերացնելու «Հայաստան» իսկ անունը Թուրքիայում: Հետևեցեք, որպեսզի այդ խնդրի կատարումը վստահվի հայրենասերների ու հուսալի մարդկանց» («Геноцид армян в Османской империи». Сборник документов и материалов под редакцией проф. М. Г. Нерсисяна, 1966, с. 420): Այդպիսիք դարձան ամեն կարգի մութ ուժեր, ռեակցիոններներ, կատաղի շովինիստներ, քրեական հանցագործներ, մարդասպաններ ևն:

Երիտթուրքերի հայաջինջ քաղաքականությունը բռնակալական Թուրքիայի մըշտապես իրականացվող հայահալած գծի անմիջական ու կատաղի շարունակությունն էր: Այդ քաղաքականության հիմքում դրված էին այսպես կոչված շարժառիթ—«պատճառներ», յուրատեսակ տնտ. ու քաղ. նկատառումներ: Թուրք. բռնակալ-կառավարողները չէին հանդուրժում, որ Օսմանյան կայսրությունում, ինչպես նշել է Ֆ. Էնգելսը, հպատակ քրիստոնյա ժողովուրդները, այդ թվում նաև հայերը, հանդիսանում էին քաղաքակրթության, տնտ. ու մշակութային առաջընթացի կրողները, որ նրանք չէին հաշտվում իրենց անլուր ճնշման հետ և մղում էին ազատագրական պայքար, որ քրիստոնյա հայերը «սեպի» նման խրվել են այսպես կոչված «իսլամական համատարած գոտու» մեջ, ունեն ռուս. կողմնորոշում և խանգարում են իրենց համաթուրանական նկրտումների իրականացմանը, որ Հայկական հարցը դարձել է *Արևելյան հարցի* բաղկացուցիչ մասն ու միջազգային դիվանագիտության առարկա: Հարկավ, բոլոր չարիքների բուն պատճառը սուլթանական Թուրքիայի բռնակալական կարգերն էին:

Իմպերիալիստական Գերմանիան կանգնած էր նույն դիրքերի վրա, քանի որ դա համապատասխանում էր նրա զավթողական ձգտումներին Կովկասում, Մերձավոր ու Միջին Արևելքում և կարելի էր օգտագործել վասալ Թուրքիային՝ մեծ տերությունների, մասնավորապես Ռուսաստանի դեմ մղվող պայքարում: Բոլշևիկյան «Պրավդա»-ն 1913-ի հուլիսի 27-ին գրել է, որ «Փոքր Ասիայի, այդ նշանակում է նաև Հայաստանի, մասին գերմանական կապիտալը շատ վաղուց է երազում»: Հայաստանը գերմ. իմպերիալիզմին պետք էր որպես խիստ կարևոր ռազմա-ստրատեգիական բազա, կամ ինչպես այդ իմպերիալիզմի գաղափարախոս Պ. Ռոհրբախն է ասել, «... բանալի այն դիրքի, որը տալիս է տիրապետություն Անատոլիական թերակղզու վրա ու Միջագետքի հովտի վրա» (Р о р б а х П., Война и германская политика, М., 1915, с. 11): Գերմ. ռազմամոլներին է պատկանում արևմտահայության բռնագաղթի (դեպորտացիա) գաղափարը, որով նախատեսվում էր նրա մի մասին, որպես բանվորական ուժի, բնակեցնել Բեռլին—Բաղդադ երկաթուղու (տես *Բաղդադի երկաթուղի*) երկայնքով ընկած անմարդաբնակ վայրերում, իսկ մնացածին՝ ոչնչացնել: Գերմանա-թուրք. զինակցությունը հանգամանորեն մշակեց ու իրականացրեց այդ հրեշավոր ծրագիրը, որն ըստ էության վերածվեց արևմտահայության զանգվածային բնաջնջման: Օսմանյան կառավարության հովանավորն էր կայզեր Վիլհելմ II, որի դեսպան Վանգենհայմը և ռազմ. կցորդ Հյումանը Կ. Պոլսում անմիջականորեն գործակցում էին երիտթուրք. պարագլուխների հետ:

Օսմանյան Թուրքիան պատերազմի մեջ մտավ զավթողական մեծ պլանով և հայերի բնաջնջման ծրագրով: Երիտթուրք. եռապետները (Թալեաթ, Էնվեր, Ջեմալ) որոշել էին բոլոր դեպքերում (հաղթության թե պարտության) ոչնչացնել արևմտահայությանը և ամեն կերպ նախապատրաստվեցին դրան: Թուրքիայում ռուս. դեսպան Մ. Գիրսը դեռևս 1914-ի սեպտ. 20-ին հեռագրում է Ռուսաստանի արտաքին գործերի մինիստր Ս. Սազոնովին, որ «մուսուլմաններին զենք է բաժանվում հայերի վերահաս կոտորածի համար» (АВПР, Политархив, д. 3484, л. 18): Պատերազմի սկզբին թուրք. կառավարողները, վստահ իրենց հաղթանակին արտաքին թշնամիների դեմ, կարծես թե դեռ չեն շտապում ներքին լայն «ռազմաճակատ» բացել, և 1914-ի հոկտեմբերին կազմակերպում են նախահարձակում Ռու-

սաստանի դեմ: Թուրք. զորքերը ավերում ու կողոպտում են սահմանամերձ շրջանները, կոտորում խաղաղ բնակչությանը և մասնավորապես հայերին: Նրանց հայյատյաց մոլուցքն ավելի է սաստկանում, երբ ստանում են առաջին հարվածները ռուս. բանակից, իսկ սուլթան-խալիֆի հռչակած «ջիհադի» («սրբազան պատերազմի») կոչն էլ ձախողվում է: Թուրք. իշխանավորները իրենց պարտությունների մեղքը գցում էին հայերի վրա և տարածում ստահոդ լուրեր ու կեղծագրեր նրանց «դավաճանության», «դասալքության» ու «ապստամբության» մասին, վկայակոչում «հայ կամավորներին», որոնք կռվում էին ռուսների հետ կողք-կողքի: Այդ ամենը սոսկ պատրվակ էր, որպեսզի թուրք ջարդարարները «արդարանան», ավելի հրահրեն ազգայնական կրքերը և սաստկացնեն իրենց հայաջինջ գործը: Հանրահայտ է, որ թուրք. պարտությունները նրանց երկրի հետամնացության ու ընդհանուր թուլության արդյունք էին, որ դասալքությունը մասսայական երևույթ էր հենց թուրք զինվորների մեջ, որ հայերը պատերազմի ժամանակ մի շարք վայրերում ոչ թե «ապստամբել են», այլ հարկադրաբար դիմել ինքնապաշտպանության, գոյամարտի: Իհարկե, ճնշվածն ունի ապստամբելու բնական իրավունք, բայց հայերը Թուրքիայում պատերազմի սկզբից կատարում են իրենց քաղաքացիական պարտականությունները: Օրինաչափ էր նաև հայ կամավորական շարժումը (տես *Կամավորական շարժում 1914—1918*), քանի որ նրա մասնակիցները (հակառակ այդ շարժումն իրենց նպատակներին ծառայեցնող տերությունների նենգ նկատառումների) ձգտում էին ռուս. զենքի օգնությամբ ազատագրել իրենց հայրենակիցներին թուրք. դաժան տիրապետությունից:

Երիտթուրքերի պարագլուխներն ու մյուս գործիչները, ահաբեկված ռուսների առաջխաղացումից և Անգլիայի ու Ֆրանսիայի հարձակումից, 1915-ի սկզբին գումարեցին գաղտնի խորհրդակցություն, որտեղ հատկապես քննարկեցին հայերի ոչնչացման հարցը: Խորհրդակցության ղեկավար, Թուրքիայի ներքին գործերի մինիստր *Թալեաթ-փաշան* կատաղի ատելությամբ ազդարարեց, որ «պետք է մաքրել հայերի հաշիվը» և խոստացավ դրա համար ոչինչ չխնայել: Երիտթուրքերի ղեկավար գործիչները (Նազըմ, Շաքիր, Շյուքրի, Ջավիդ և ուրիշներ) միաբերան պահանջեցին բնաջնջել բոլոր ոչ թուրք ժողովուրդներին, այդ թվում քրդերին ու արաբներին, բայց այդ ժամանակ առաջնահերթ համարեցին հայերի ոչնչացումը. «Պետք է, որ հայ ազգը արմատախիլ ըլլա, մեր հողին վրա անհատ մը անգամ չմնա, հայ անունը մոռացվի», «ոչ-թուրք տարրերը թող ջնջվին, որ ազգության և կրոնքին ալ պատկանած ըլլան» (Մ և վ լ ա ն զ ա դ ե Ռ ի ֆ ա թ, Թուրքական հեղափոխության մութ ծալքերը, Բեյրութ, 1938, էջ 159—61): Ընդունվեց հայերի բնաջնջման որոշում և հանձնարարվեց կառավարությանը՝ իրականացնել այն: Կազմվեց այդ հարցով զբաղվող գործադիր կոմիտե (դոկտոր Նազըմ, դոկտոր Բեհաեդդին Շաքիր ու լուսավորության մինիստր Միդհաթ Շյուքրի) և լիազորներ կարգվեցին վիլայեթներում: Հանձնարարվեց հայերին բնաջնջել բոլոր միջոցներով: Թալեաթի գլխավորությամբ ստեղծվեց հայերի բնաջնջման 10-հազարանոց հատուկ կազմակերպություն (Թեշքիլաթը մախսուսե)՝ լայն ճյուղավորմամբ (50-ական հոգով), և համապատասխան հրահանգներ ուղարկվեցին բոլոր վիլայեթները: 1915-ի փետր. 18-ի գաղտնի հրահանգում ասված էր, որ «Ջեմիյեթը» (Իթթիհաթի կենտրոնը) «Թուրքիո մեջ ապրող բոլոր հայերը, առանց անհատ մը ողջ ձգելու, փչացնել որոշած և այս մասին կառավարության ընդարձակ իրավասություններ տված է: ...Չպիտի թույլատրվի, որ հայ մը օգնության և պաշտպանության արժանանա» (Ա ն տ ո ն յ ա ն Ա., Մեծ ոճիրը, Բոստոն, 1921, էջ 130—133): Ապրիլի 15-ին Թալեաթի, *Էնվեր-փաշայի* ու Նազըմի ստորագրությամբ տեղական իշխանություններին է ուղարկվում հայերի համատարած բռնագաղթի ու ջարդերի կազմակերպման հրաման, որտեղ նշված էր. «Իսլամ և թուրք ժողովուրդը ներկայացնող կառավարությունը և «Միություն և առաջադիմություն» կոմիտեն, միացած ուժերով, ինչ որ ալ պատահի, որևէ հաշտության սեղանի վրա, որևէ ձևով հայկական հարցի մը դրվելը կանխելու համար, օգտվելով պատերազմին մեզ բերած սա անկախութենեն, որոշեցինք վերջնական հաշվեհարդարի ենթարկել զայն, բնաջնջելով անհարազատ այդ տարրը, քշելով զանոնք դեպի Արաբիո անապատները, համաձայն տրված մեր գաղտնի հրահանգին... Արդ, կառավարությունն ու Իթթիհաթի մեծ կոմիտեն կոչ կընենք ձեզ և ձեր հայրենասիրության և կհրամայենք, որ ձեր բոլոր տրամադրելի ուժերով աջակցիք «Միության և առաջադիմության» տեղական մարմիններու, որոնք 24 ապրիլի արևածագեն սկսյալ, գաղտնի ծրագրի մը համաձայն, գործադրության պիտի դնեն այս հրամանը: Որևէ պաշտոնատար ու անհատ, որ կհակառակի այս սրբազան ու հայրենասիրական գործին ու չի տրամադրվիր իրեն հանձնված պարտականության և որևէ ձևով այս կամ այն հայը պաշտպանելու կամ պահելու փորձ կընե, հայրենիքին և կրոնքին թշնամի կնկատվի և ըստ այնմ ալ կպատժվի» (Ք և չ յ ա ն Ա., Կարմիր դրվագներ հերոսներու կյանքեն. 1915—1918, հ. 1, Բուխարեստ, 1938, էջ 63—64):

Թուրքական կառավարության 1915-ի ապրիլի 15-ի գաղտնի հրահանգը հայերի համատարած բռնագաղթի և ջարդերի մասին

Թալեաթ-փաշայի 1915-ի սեպտեմբերի 16-ի ծածկագիր հեռագիրը հայերի բնաջնջման մասին

Երիտթուրք. կառավարողները պատերազմի սկզբից ևեթ ձեռնամուխ եղան հայերի բնաջնջման գործին: Առաջին ծանր հարվածը տրվեց թուրք. «սեֆերբելիքով» (զորահավաք), որն իսկական պատուհաս դարձավ հայերի գլխին: Մինչ այդ բանակում գտնվող հայ զինվորականներին (1908-ի հեղաշրջումից հետո քրիստոնյաները ևս ենթակա էին զինվորական ծառայության) միացվեցին բազմահազար զորակոչիկներ (18—45 տարեկան բոլոր «ռազմունակ» տղամարդիկ), որոնց մտցրին աշխատանքային գումարտակների (ամելե թաբուրի) մեջ (փոխադրում էին բեռներ, ճանապարհներ շինում և այլն) և մաս-մաս ոչնչացրին նրանց: Թուրք. կառավարությունը կարգադրել էր սպանել օսմանյան բանակի բոլոր հայ զինվորականներին: Ահա ռազմ. մինիստր Էնվեր փաշայի հրամանը, որտեղ ասված էր. «Կայսերական բանակներու մեջ ծառայող բոլոր հայ անհատները, առանց դեպքի մը տեղի տալու՝ իրենց զորաբաժիններեն զատելով, ընդհանուրին աչքեն հեռու ծածուկ վայրերու մեջ զնդակահար պիտի ըլլան» (Ա ն տ ո ն յ ա ն Ա., Մեծ ոճիրը, էջ 232): Գազանաբար հոշոտվեց 60 հզ. հայ զինվորական: Թուրք. զորահավաքն ուղեկցվում էր համատարած շուրջկալներով, որոնց ժամանակ մարդկանց, «զենքեր» հավաքելու և պատերազմական տուրք գանձելու պատրվակով, ավերում էին հայերի տները, կողոպտում նրանց ունեցվածքը, ձերբակալում ու սրախողխող անում շատերին: Ռուս. հետախուզությունը 1915-ի մարտի 15-ին ու ապրիլի 3-ին Թուրքիայի վերաբերյալ հաղորդում էր. «Ամբողջ երկրում տեղի են ունենում հայերի ձերբակալություններ... Սիստեմատիկ կոտորածներ Էրզրումում, Դյորթյոլում, Զեյթունում և շրջակայքում: Արյունալից ընդհարումներ Բիթլիսում, Վանում, Մուշում... բռնություններ, թալան, սպանություններ Ակնում և ամբողջ Փոքր Հայքում: Ժողովրդի տնտեսական քայքայում, ընդհանուր կոտորած» (ЦГВИА, ф. 2000, оп. 1, д. 3851, л. 92—94): Այս փաստերն ակնառու կերպով հաստատում են այն իրողությունը, որ հայերի կոտորածն սկսվել

էր ավելի վաղ, քան նրանք տեղ-տեղ դիմեցին ինքնապաշտպանության:

Արևմտահայության ռազմունակ ուժի ոչնչացմանը զուգընթաց թուրք. կառավարողները գլխատեցին նաև նրա ղեկավար ուժը՝ մտավորականությանը: Հանցամտորեն նախապատրաստվեց ու սադիստական դաժանությամբ իրականացվեց այդ մահասարսուռ գործողությունը, որն սկսվեց Կ. Պոլսից, ուր գտնվում էր արևմտահայության ծաղիկը: Հայասպան տարերքի մեջ էր ոստիկանապետ Պետրի բեյը՝ իր օգնականներով (Ռեշադ, Ջանփոլադ): Թուրք. կառավարության կողմից նախօրոք հաստատված սև ցուցակի համաձայն, կնքված հատուկ ծրարներ ուղարկվեցին Կ. Պոլսի ոստիկանական բոլոր տեղամասերը՝ որոշակի օր ու ժամի բացելու կարգադրությամբ: Եվ ահա վրա հասավ այդ մահաբեր պահը՝ 1915 թվականի ապրիլի 24-ը, երբ կենտրոնական բանտ (մեթթերհանե) բերվեց հայ մտավորականների առաջին խումբը: Այնուհետև շարունակվեցին ձերբակալությունները: Կարճ ժամանակում բանտարկյալների թիվը հասավ շուրջ 800 հոգու, որոնց մեջ կային գրողներ, գիտնականներ, արվեստագետներ, մանկավարժներ, հրապարակախոսներ, դերասաններ, բժիշկներ, հոգևորականներ, հասարակական գործիչներ, այդ թվում՝ թուրք. մեջլիսի հայ երեսփոխաններ: Դրանց բոլորին քշեցին Անատոլիայի խորքերը (Այաշ, Չանկըր, Չորում) և գազանաբար սպանեցին: Նույն բախտին արժանացան նաև վիլայեթներում գտնվող հայ մտավորականները: Զոհվածների մեջ էին Գրիգոր Զոհրապը, Սիամանթոն, Դանիել Վարուժանը, Ռուբեն Սևակը, Ռուբեն Զարդարյանը, Երուխանը, Հովհաննես Թլկատինցին; Արտաշես Հարությունյանը, Տիգրան Չյուկյուրյանը, Սմբատ Բյուրատը, Տիրան Քելեկյանը, Նազարեթ Տաղավարյանը, Ենովք Շահենը, Եսալեմը (Գարեգին Կոզիկյան), Հրանդը (Մելքոն Կյուրճյան), Հրանտ Աստվածատրյանը, Գագիկ Օղանյանը, Գեղամ Բարսեղյանը, Գեղամ Տեր-Կարապետյանը, Լևոն Լարենցը, Գրիգոր Թորոսյանը և շատ ուրիշներ: Աքսորյալների մեջ էր նաև հայ հանճարեղ կոմպոզիտոր Կոմիտասը, որն ահավոր եղեռնի ազդեցության տակ խելագարվեց:

Երիտթուրքերի կազմակերպած դժոխային սպանդի զոհեր դարձան արևմտահայ մտավորականները, որոնք ոչ միայն խոշոր ավանդ ունեին հայ ժողովրդի հարուստ մշակույթում, այլև վիթխարի ծառայություններ էին մատուցել Թուրքիայի զարգացմանը: Կ. Պոլսից արտաքսվեցին նաև 10 հզ. հայեր, իսկ 1915-ի հունիսին այնտեղ կախաղան բարձրացվեցին 20 հնչակյան գործիչներ:

Մեծ ոճիրը իր գագաթնակետին հասավ արևմտահայության զանգվածային տեղահանությամբ ու կոտորածով: Այդպես վարվեցին Թուրքիայի բոլոր հայկ. վիլայեթներում ու հայաբնակ վայրերում: Թալեաթ փաշան 1915-ի սեպտ. 9-ին կարգադրել էր. «Թուրքական հողի վրա հայերի ապրելու և աշխատելու իրավունքը լիովին վերացված է: Դրան համապատասխան կառավարությունն իր վրա է վերցնում ամբողջ պատասխանատվությունը և հրամայում է չխնայել նույնիսկ օրորոցի մանուկներին» («Геноцид армян в Османской империи», с. 422):



Խարբերդի հայ մտավորականների աքսորումը

Հայերի բնաջնջումը տեղի ունեցավ ամենաբազմազան ու բիրտ եղանակներով: Մասնավորապես լայնորեն կիրառվեց զանգվածային բռնագաղթը, երբ հայերին տեղահան էին անում իրենց հինավուրց բնակավայրերից և քշում Միջագետքի անապատները: Իրավացի էր ֆրանսիացի հրապարակախոս Ռենե Պինոն՝



Հայ աքսորյալներ



գրելով. «Հայերի բռնագաղթը լոկ նենգամտորեն քողարկված մահվան դատավճիռ էր» (Pinon R., La suppression des Arméniens. Méthode allemande—travail turc, P., 1916, p. 27): Իրոք, հայերի տեղահանությունը կազմակերպված մասսայական կոտորած էր, և բռնագաղթվածների տանջալից ուղին վեր էր ածվում համատարած գերեզմանոցի: Հայերի (մեծ մասամբ կանանց, ծերերի ու երեխաների) խառնիճաղանջ կարավանները հալվում էին ճանապարհին՝ զոհ դառնալով թուրք. ու քրդական հրոսակախմբերի ու բաշիբոզուկների հարձակումներին, ինչպես նաև քաղցին ու հիվանդություններին:

Հայերի զանգվածային ջարդերն սկսվեցին արլ. վիլայեթներում, որոնք առնչվում էին պատերազմական գործողությունների հետ: Ռուս. զորքի առաջխաղացման պայմաններում թուրքերին չհաջողվեց այդտեղ կազմակերպել հայերի մասսայական տեղահանություն, ուստի, նրանք դիմեցին բոլոր հնարավոր միջոցներին՝ նրանց տեղում բնաջնջելու համար: Ահավոր խժդժություններ տեղի ունեցան մասնավորապես Վասպուրականում՝ Վանի հայաբնակ վիլայեթում (ուր մինչև պատերազմը կար մոտ 200 հզ. հայ), որի կուսակալն էր արյունարբու Ջևդեթ բեյը: Նրա հրոսակախմբերն ու թուրք. զորքերը Սարայի ու Բաշկալեի շրջաններում ոչնչացրին 10 հզ., իսկ Վանա լճի հս. մասում՝ 24 հզ. հայ: Եվ այդպես՝ ամենուրեք, ուր հասնում էր թուրք. յաթաղանը: Անլուր գազանություններ տեղի ունեցան Բերկրիի շրջանում, և Բանդիմահի գետի ժայռապատ կիրճերը լցվեցին հայերի դիակներով: Երբ ռուս. զորքը և նրա հետևից հայ ականավոր գրողներ Հ. Թումանյանն ու Ա. Շիրվանզադեն մտան Վանի վիլայեթ, ականատես եղան մահասարսուռ տեսարանների. «Երեխաների ճակատներին մեխ են խփել, կենդանի մարդկանց զանազան մասերը կտրատել են, զանազան կերպ դասավորել, խաղեր են արել, մինչև կեսը դրել են պղինձ ու կեսից ներքև եփել, որ մյուս մասը կենդանի տեսնի ու զգա, շիկացած երկաթներով կտրել են մարմնի զանազան տեղերը և կրակի վրա խորովել, կենդանի խորովել են: Ծնողների առաջ երեխաներին են կոտորել, երեխաների առաջ՝ ծնողներին» (Հ. Թումանյան, Երկ., հ. 6, Ե., 1959, էջ 212—213):

Պատերազմն անակնկալի բերեց արևմտահայությանը, նա պատրաստ չէր ինքնապաշտպանության: Այնուամենայնիվ, նա չէր կարող անմռունչ տանել թուրք. վայրագությունները և որտեղ հնարավոր էր դիմեց անձնվեր գոյամարտի: Այդպիսի կռիվներ տեղի ունեցան Վանի վիլայեթի մի քանի վայրերում, ինչպես, օրինակ, Շատախում (տես *Շատախի հերոսամարտ 1915*), Հայոց ձորում, Արճեշում, Թիմարում և այլուր: Առավել նշանավոր էր Վանի ինքնապաշտպանությունը (տես *Վանի հերոսամարտ 1915*), որը տևեց 1915-ի ապրիլի 7-ից մինչև մայիսի 6-ը: Դա կատարվեց այն բանից հետո, երբ Ջևդեթը, չբավարարվելով վիլայեթի գավառների ու գյուղերի հայության ջարդերով, փորձեց իսպառ մեռցնել նրա հայախոս կենտրոնը: Բայց նա հանդիպեց վանեցիների միահամուռ ու հերոսական դիմադրության, որը պսակվեց հաղթանակով, և շուտով Վան մտան ռուս. զորքերն ու հայ կամավորները: Վանի (Վասպուրականի) ինքնապաշտպանության մարմինը հաղթանակի առթիվ հանդես եկավ հատուկ կոչով, որտեղ ասված էր. «Ահա կբոլորենք մեր ամսօրյակը-ամսօրյակը պայքարի ու փառքի, մահվան ու հարության մեր ցեղին...

Ամիս մը առաջ, այսօր, երբ թշնամին վատաբար կռիվ հայտարարեց քաղաքակրթության և արդարության դեմ, մե՛ր դեմ, մենք հավատքով փարեցանք մեր զենքին և մեր հոգիի խորերեն զգացինք, որ հաղթանակը մերը պիտի ըլլա այս կռվին մեջ, վասնզի մեր կռիվը խավարին դեմ էր, տգիտության ու բռնության դեմ՝ ճշմարտության և արդարության համար... Եվ կուրծք տվինք մենք թշնամիի մոլեգին ու ամբարտավան ժեստերուն ու հարձակումներուն և մեր հերոսական ու պատմական մարտնչումներու ընթացքին՝ ո՛չ մեկ տեղ և ո՛չ մեկ վայրկյան թշնամին չտեսավ մեր զինվորը պարտված և մեր դիրքը լքված» (Կէորկիզյան Ա., Վասպուրականի հերոսամարտը, Բեյրութ, 1965, էջ 197—198): Վանի հերոսամարտը ոգեշնչեց արևմտահայության մյուս հատվածներին՝ թուրք. բռնակալության դեմ մղվող կենաց ու մահու պայքարում:


Տեսարան Վանի ինքնապաշտպանությունից

Վանի ազատագրումից հետո կազմվում է ժամանակավոր կառավարչություն, որը ձեռնամուխ է լինում գործերի կարգավորմանը: Բայց դա կարճ է տևում, քանի որ ռուս. զորքերը հուլիսի 2-ին նահանջում են, իսկ նրանց հետևից տեղահան է լինում Վասպուրականի հայությունը՝ ճանապարհին տալով 40 հզ. զոհ: Հայասպան Ջևդեթն անմիջապես մտնում է Վան և անխնա կոտորում այնտեղ մնացած հայերին (մեծ մասամբ ծերերի, հիվանդների, վիրավորների, կանանց, երեխաների, որոնք չէին կարողացել գաղթել): Ռուս. զորքը, վերագրավելով Վանը, այն գտավ բոլորովին ավերված ու անշունչ: Վանի կործանումը կատարվեց գերմ. զինվորականների աջակցությամբ, մասնավորապես «գերմանացի սպան անձամբ ղեկավարել է թուրքական հրետանու կրակը խաղաղ հայ բնակչության դեմ» (Гибонс Г. А., Последние избиения в Армении, П., 1916, с. 20):

Վասպուրականից հետո ջարդերն ահավոր չափերի հասան Թուրքիայի մյուս հայաբնակ նահանգներում ու վայրերում: Անլուր գազանություններ տեղի ունեցան Էրզրումի (Կարին) վիլայեթում, ուր բնակվում էր 215 հզ. հայ: Այստեղ մասնակի կոտորածներն սկսվեցին նախքան ռուս-թուրքական ռազմաճակատի բացումը, որը պետք է դառնար լուրջ ահազանգ՝ ինքնապաշտպանություն կազմակերպելու համար: Բայց այդպես չվարվեցին հայ ազգային (դաշնակցական) ու հոգևոր. գործիչները և իրենց «հաշտվողականության ու հպատակության» քարոզներով միայն վնաս հասցրին: Պատերազմը բորբոքվելուց հետո Կարինում կազմվեց հայերի տեղահանման ու բնաջնջման հատուկ մարմին (Բեհաեդդին Շաքիր, Թահսին բեյ, Սեյֆուլլահ և ուրիշներ), որը գերմ հյուպատոսների ու սպաների (Անդերս, Շվարց, Շուլենբուրգ, Շոյբներ-Ռիխտեր և ուրիշներ) աջակցությամբ անցավ համատարած ջարդերի կազմակերպման՝ ազդարարելով. «Քանի դեռ կենդանի է թեկուզ մեկ հայ, կիսալուսինը հաղթանակ չի ճանաչի»: 1915-ի մայիս—հուլիսին տեղահանվեց ու բնաջնջվեց Էրզրումի վիլայեթի քաղաքների ու գյուղերի հայությունը: Անլուր զանգվածային ջարդեր տեղի ունեցան հատկապես Կամախի կիրճում, Բասկանում և այլուր: Ահա թուրք. վայրագություններից մեկը. «Կամախ չհասած, կին մը կծննդաբերեր, ոստիկան մը երեխան մորը արգանդեն դուրս քաշեց, սվինով երկուքի բաժնելով ըսավ. «Տես հիմա երկվորյակ մը ունեցար». մայրը երկու ժամ վերջը մեռավ» («Տեր-Զոր: Աղետեն վերապրողներ», Փարիզ, 1955, էջ 215): Կարինի հայության բնաջնջումը երիտթուրքերը դիտում էին որպես «սխրագործություն», և հայտնի ջարդարար Խալիլ բեյն ասաց. «Հայաստանի սիրտը խլեցի հանեցի, կարգը եկավ արաբներուն: Ով որ օսմանյան մահիկին տակ գլուխ չի ծռեր, Հայաստանի վիճակին կենթարկվի» («1915: Աղետ և վերածնունդ»: Հեղինակ՝ Աղետեն վերապրողներ, Փարիզ, 1952, էջ 173): Կարինի բախտը բաժանեց Պոնտոսի (Տրապիզոնի, Սամսոնի ևն վայրերի) 100 հզ-անոց հայությունը, որի դահճապետը դարձավ վալի Ջեմալ Ազիմ փաշան՝ իր գերմանացի աջակիցներով (հյուպատոս Բերգֆելդ, փոխհյուպատոս Կուկհոֆ, սպա Շտանկե և այլք): Նրա հրամանով թունավորեցին կամ ողջ-ողջ ծովը նետեցին նաև վերջին բեկորներին՝ 600 հայ մանուկների: Չնայած դժոխային վիճակին ու կատարյալ անհավասար պայմաններին, այնուամենայնիվ հարյուրավոր խիզախ տրապիզոնահայեր (այդ թվում՝ համշենցիներ) հերոսաբար մարտնչեցին թուրք. ոսոխների դեմ և նավակներով դուրս եկան ռուս. ափ:

Թուրք. կառավարությունը կատաղի թշնամությամբ էր լցված դեպի բազմաքանակ (180 հզ.) ու խիզախ տարոնահայությունը և ամեն ինչ արեց օր առաջ գերեզմանելու հայ ժողովրդի ազգային-ազատագրական շարժման կենտրոններ Սասունն ու Մուշը: Ծրագրվեց տեղում գլխովին ոչնչացնել հայ բնակչությանը՝ առանց որևէ բռնագաղթի: Այստեղ կենտրոնացվեցին զինվորական մեծ ուժեր ու հրոսակախմբեր, և շուտով սկսվեցին նրանց մահատարած գործողությունները, որոնք իրականացվում էին Բիթլիսի նահանգապետ Մուստաֆա Աբդուլ Խալգի, Մուշի գավառապետ Սերվեթ բեյի, ընդհանուր զինվորական հրամանատար Վասֆի բեյի, Մուշի թուրք երեսփոխան Հոճա Իլյասի անմիջական ղեկավարությամբ: Դրանք կարող էին ձախողվել, եթե նախօրոք կազմակերպվեր թուրք. իշխանություններին բազմիցս դիմադրած տարոնահայության պատշաճ ինքնապաշտպանություն, մանավանդ որ արդեն մոտենում էին ռուս. զորքերը: Բայց կործանարար դեր կատարեցին Տարոնում գտնվող դաշնակցական գործիչներ Ռուբեն փաշան (Տեր-Մինասյան) ու «Կոմսը» (Վահան Փափազյան), որոնք չարձագանքեցին դեռ 1914-ի նոյեմբերին տրված ահազանգերին, վարեցին պասսիվ սպասողական գիծ, մորթապաշտորեն պատսպարվեցին, իսկ վերջում էլ, լքելով դիրքերը, ճողոպրեցին Անդրկովկաս: Թուրք. իշխանություններն օգտագործեցին ստեղծված «բարենպաստ» վիճակը և 1915-ի ապրիլ—օգոստոսին կազմակերպեցին հայ բնակչության զանգվածային կոտորած: Ոչնչացվեցին ավելի քան 125 հայաբնակ գյուղեր: Մարդկանց լցնում էին եկեղեցիները, մարագները, գոմերն ու կրակ տալիս, սպանում էին ամենաբիրտ ձևերով, երեխաներին մորթում ծնողների առաջ, սվինների վրա ցից հանում: Անհնար էր դիմանալ այդ ամենին, և բազմաթիվ վայրերում հայերը, հավատարիմ անցյալի հերոսական ավանդույթներին, մղեցին անձնուրաց կռիվներ: Այդպիսիք էին մասնավորապես Մուշի գոյամարտը (տես *Մուշի գոյամարտ 1915*) և Սասունի ինքնապաշտպանությունը (տես *Սասունի ինքնապաշտպանություն 1915*), երբ հայերը, հակառակ դաշնակ «ղեկավարների» անճարակության, 7 ամիս շարունակ մարտնչում էին: Նրանք շատ զոհեր տվին, և միայն քչերը փրկվեցին ու ապաստան գտան Անդրկովկասում:


Բիթլիսում ողջակիզված հայերի ոսկորներ


Մուշի Ալի Ջռնան գյուղում այրվածների ոսկորներ

Սըվազի (Սեբաստիայի) վիլայեթի հայությունը (225 հզ.) տեղահանվեց ու բնաջնջվեց 1915-ի հունիս—հուլիսին: Այդ եղեռնի անմիջական կազմակերպիչներն էին վալի Մուամմերը, իթթիհաթականներ Բեհաեդդին Շաքիրը ու Ղանի բեյը, երեսփոխաններ Ֆազըլ բեյը, Ռասիմ Մութևիլզադեն, Հաջի Էմինը, ժանդարմերիայի պետ Խալիլ բեյը և ուրիշներ: Նրանց հետ էին գերմանացի հյուպատոս Կարլ Վերթն

ու բազմաթիվ զինվորականներ: Չնայած խիստ ծանր կացությանը, հայերն օգտագործում էին եղած հնարավորությունը և մարտնչում իրենց գոյության համար: Հատկապես նշանավոր էր Շապին-Գարահիսարի դիմադրությունը (տես *Շապին-Գարահիսարի հերոսամարտ 1915*), որի մասնակիցները՝ ժող. հերոս *Անդրանիկի* հայրենակիցները (ինքը Անդրանիկը մարտնչում էր ռազմաճակատում), ամրանալով հայկ. թաղի մոտ գտնվող բերդում, 27 օր շարունակ քաջաբար դիմադրեցին թուրք. կանոնավոր զորքերին:

Թուրք. կառավարողները հունիս-նոյեմբերին կազմակերպեցին Խարբերդի (Մամուրեթ ուլ Ազիզի) վիլայեթի հայության (204 հզ.) կոտորածը: Դեռ գարնանը գաղտնաբար սպանվեցին հայ զինվորականներն ու մտավորականները: Այնուհետև, քաղաքներից ու գյուղերից հայ բնակչությանը գաղթեցնելու անվան տակ, կարավաններով քշեցին դեպի Միջագետքի անապատները՝ մեծ մասին ոչնչացնելով ճանապարհին: Մարդկանց հոշոտում էին ամենավայրագ ձևերով: Ականատեսը պատմում է, թե ինչպես հայ մարդկանց մերկացնում էին, կապկպում միմյանց և խժդժորեն սպանում «տապարներով ու դանակներով» (Ճ ի զ մ ե ճ յ ա ն Մ., Խարբերդ և իր զավակները, Ֆրեզնո, 1955, էջ 462): Մալաթիայից մինչև Եփրատ ընկած լեռնաձորը դարձավ ահավոր սպանդանոց և կոչվեց Արյան ձոր (Կանլը դարա): Ավերվեց երբեմնի բարգավաճ Խարբերդը, ոչնչացվեցին նրա հնօրյա բնակիչները: Խարբերդի հայության բռնագաղթի ու ջարդի անմիջական կազմակերպիչներն էին կուսակալ Զաբիթ բեյը, գավառապետ Ասըմ բեյը, կատաղի իթթիհաթական Փուլաթըր Խալիլը, զինվորականներ Վեհբին, Ֆերիդը, Մահմեդ Ալին, Ռեշադը, Ալի Ռիզան, Քյազիմը և ուրիշներ:

Դիարբեքիրի (Տիգրանակերտի) վիլայեթի հայության (124 հզ.) դեմ կատաղի հալածանքներ սկսվեցին պատերազմի բորբոքումից անմիջապես հետո, և արդեն 1914-ի սեպտ. 27-ին Կ. Պոլսի հայոց պատրիարքարանին հաղորդվեց. «Ժողովուրդը հասցուցած են այն աստիճանին, որ այլևս ապրելն անկարելի է...» (Զ ա վ ե ն ա ր ք ե պ ի ս կ ո պ ո ս, Պատրիարքական հուշերս. վավերագիրներ և վկայություններ, Կահիրե, 1947, էջ 54): Զանգվածային տեղահանությունն ու կոտորածը կազմակերպվեց 1915-ի ապրիլ-օգոստոսին: Ահավոր ջարդեր տեղի ունեցան Դիկաթլան ձորի մեջ, և արաբ ականատեսը վկայում է, որ դժբախտների տառապանքը կարող էր «նույնիսկ վայրենի կենդանիների գութը շարժել և արցունքներ կորզել անշունչ ժայռերից» (F a i e z e l-C h o c é i n, Temoignage d'un Arabe musulman sur L'innocence et massacre des Arméniens, Bombay, 1917, p. 12): Դիարբեքիրի հայության կոտորածների կազմակերպիչներն էին կուսակալ Ռաշիդ բեյը, թուրք երեսփոխաններ Ֆեյզի ու Զիֆի բեյերը, ժանդարմապետ Ռյուշտին, Մարդուբշի Բեդրեդդին բեյը, իթթիհաթական Քոռ Յուսուֆը և ուրիշներ:

Ավերվեց ու դատարկվեց Արևմտյան Հայաստանը, ուր այցելած ֆրանսիացի ժուռնալիստ Անրի Բարբին 1916-ի հուլիսին գրել է. «Ով էլ այժմ անցնի ավերված Հայաստանով, չի կարող չցնցվել, քանի որ արտասովոր շատ բան են ասում ավերակների ու մահվան այդ անսահման հեռաստանները: Չկա և ո՛չ մի ծառ, ո՛չ մի ժայռ, մամուռի ո՛չ մի կտոր, որը վկա չլինի մարդու սպանության, որը պղծված չլինի հեղած արյան շիթերով: Չկա և ո՛չ մի ջուր, գետակ կամ վտակ, որը հավիտենական մոռացության տված չլինի հարյուրավոր, հազարավոր մեռած մարմինների: Չկա և ո՛չ մի անդունդ, ո՛չ մի կիրճ, որ գերեզման դարձած չլինի բաց երկնքի տակ, որոնց խորքերում չերևային կմախքների բաց կրծքավանդակները, քանի որ մարդասպանները համարյա և ոչ մի տեղ ժամանակ ու ջանք չէին թափում թաղելու իրենց զոհերին: Այդ լայնարձակ մարզերում, որոնք ինչ-որ ժամանակ աչքի էին ընկնում ծաղկող հայկական բնակավայրերով, այժմ թագավորում են ավերածությունն ու անմարդաբնակությունը» (Б а р б и А., В стране ужаса. Мученица Армения. Тифлис, 1919, с. 40):



Հայերի զանգվածային կոտորած

Ջարդերի ալիքը տարածվեց նաև Արմ. ու Կենտրոնական Անատոլիայի հայաբնակ վայրերում: 1915-ի ամռանը զանգվածային բռնագաղթեր ու կոտորածներ կազմակերպվեցին Իզմիթ (Նիկոմիդիայի) սանջակում, Բուրսայի (Բրուսայի), Իզմիրի, Անկարայի (Անգորայի), Կոնիայի ու Կաստամունիի վիլայեթներում: Ահավոր դաժանություններով ոչնչացնում էին բոլոր հայերին՝ չխնայելով անգամ մանկահասակ երեխաներին: Երբ ականատես մահմեդականներից մեկը, չդիմանալով Յոզղաթի հայության դահիճ Քեմալ բեյի դաժանություններին, ասաց. «Բեյ էֆենդի, սա Ղուրանին ո՛ր տեղը գրված է անմեղ մանուկները ասանկ սպանել, դուն գթություն չունի՞ս», նա զայրույթով պատասխանեց. «Եթե գիտես, թե գթության երակը որն է, ցույց տուր ինձի, որ նայիմ, անմիջապես կտրեմ և նետեմ» («Հուշամատյան մեծ եղեռնի», Բեյրութ, 1965, էջ 328): Չնայած դժոխային կացությանը, հայերը որոշ վայրերում դիմեցին անձնազոհ գոյամարտի, և մասնավորապես հռչակվեց Չաք գյուղը: Թուրքիայի արմ. ու կենտրոնական մարզերում հայկ. ջարդերի անմիջական կազմակերպիչներն էին Անկարայի վալի Աթըֆը և ոստիկանապետ Բեհաեդդինը, Յոզղաթի մյութասերիֆ Քեմալ բեյը, Կեսարիայի (Կայսերի) կառավարիչ Ահմեդ Միդհաթը և ուրիշներ:



Սպանված հայերի դիակներ (Անկարայի վիլայեթ)

Ահավոր մղձավանջ ապրեց կիլիկիահայությունը (ավելի քան 200 հզ. հայ): Այդ հերոսական լեռնաստանը՝ Զեյթուն արծվաբերդով վաղուց էր դարձել թուրք. բռնակալության աչքի փուշը, և, երբ ըսկըսվեց պատերազմը, նրա դեմ էլ ուղղվեց առաջին հարվածը: Կիլիկիահայությունը, որն ուներ ազգային-ազատագրական շարժման պանծալի ավանդույթներ, կարող էր վերստին դիմել անձնվեր պայքարի, բայց դրան խանգարեցին հայ «երևելիները» և մասնավորապես՝ Կիլիկիայի կաթողիկոս Ս. Խապայանը, որոնք, խաբված թուրք. կեղծ խոստումներից, «հնազանդության» կոչ արեցին հայերին: Դրանից օգտվեցին օսմանյան կառավարողները, որոնք գերմ. հյուպատոս Ռյոսլերի հետ մշակեցին ու իրականացրին կիլիկիահայության տեղահանման ծրագիրը: Արևմտահայության բռնագաղթն սկսվեց Կիլիկիայից, 1915-ի մարտին, թեպետ այն ո՛չ պատերազմական գոտի էր և ո՛չ էլ որևէ ապստամբություն էր տեղի ունեցել այնտեղ: Եղավ սոսկ մասնակի դիմադրություն (Փանոս Չաքրյանի գլխավորությամբ), ավերվեց Զեյթունը, և ապա կիլիկիահայությունը քշվեց դեպի Դեյր էզ-Զոր, Կոնիայի ու Էրեգլիի (Էրեյլի) ճահճուտները: Դա մահվան ուղի էր, որը պատվեց անմեղ հայերի դիակներով:

1915-ի մայիսից սկսվեց հայերի բռնագաղթն ու կոտորածը Հալեպի վիլայեթում, և մեկը մյուսի հետևից դատարկվեցին Մարաշը, Այնթապը, Անտիոքը, Իսկենդերունը, Քեսապը ևն: Որոշ վայրերում հաջողվեց կազմակերպել ինքնապաշտպանություն, և մասնավորապես խիզախաբար մարտնչեցին Սվեդիայի վեց գյուղերի հայերը, որոնք բարձրացան Մուսա լեռն ու ավելի քան 40 օր անընդհատ հարվածներ հասցրին հարձակվող թուրքերին (տես *Մուսա լեռան հերոսամարտ 1915*): Կազմակերպված էր նաև Ուրֆայի դյուցազնամարտը (տես *Ուրֆայի հերոսամարտ 1915*), երբ ոտքի ելավ քաղաքի ամբողջ հայ բնակչությունն ու կռվեց մի մարդու նման՝ «Մահ կամ ազատություն» նշանաբանով: 25 օր շարունակ տղամարդ թե կին, ծեր թե երեխա միասնաբար հարվածներ են հասցնում անարգ թշնամուն, որը հարկադրված էր խոստովանել. «Ինչ կլինի մեր վիճակը, եթե այս ծանր օրերին մեր դեմ այդպես ծառանային մի քանի

Ուրֆաներ»: Ուրֆայի հայության կոտորածի կազմակերպմանը ևս մասնակցեցին գերմ. պաշտոնյաները և մասնավորապես սպա Էքհարդը (տես՝ Bryce Viscount, The Treatment of Armenians in the Ottoman Empire 1915—1916. Documents Presented to Wiscount Grey of Fallodon, Secretary of State for Foreign Affairs, L., 1916, p. 530):



Մուսա լեռան հերոսամարտի մի խումբ մասնակիցներ

Թուրք. բռնակալության ցեղասպանության քաղաքականությունն ընդգրկեց Օսմանյան կայսրության բոլոր հայաբնակ վայրերը: Հայերի բնաջնջումը իրականացվեց թե՛ տեղերում, թե՛ բռնագաղթի ճանապարհներին և թե՛ աքսորավայրերում՝ Միջագետքի անապատներում, հատկապես Դեր Զորում (տես *Դեյր էզ-Զորի կոտորած 1915—1916*) ու Ռաս էլ-Այնում (Ռես ուլ-Այն): Ընդհանուր առմամբ 1915-ին տեղահանվեց շուրջ 1,5 մլն հայ, որոնց մեծ մասը (800 հզ.) ոչնչացվեց բռնագաղթի ճանապարհներին, շատերն իրենց գերեզմանը գտան Տիգրիս ու Եփրատ գետերում, իսկ 400 հզ. հոգի տանջամահ եղան անապատներում: Այդ ամենը կատարվում էր թուրք. կառավարության կարգադրությամբ: Թալեաթը հրամայել էր սպանել բոլոր աքսորյալ հայերին՝ ինչպես տղամարդկանց, այնպես էլ կանանց ու երեխաներին: Ահա նրա բազմաթիվ հեռագրերից երկուսը՝ Հալեպի կուսակալին. «Վրա հասավ արտաքսումների վերջը: Սկսեք գործել նախկին հրամանների համաձայն, և դա կատարեցեք որքան կարելի է շուտ», «Ձեզ արդեն հաղորդվել է, որ Ջեմիյեթի ցուցումով որոշվել է լիովին ոչնչացնել Թուրքիայում ապրող հայերին: Նա, ով դուրս կգա այդ որոշման դեմ, չի կարող մնալ պաշտոնական դիրքում: Ինչքան էլ դաժան լինեն ձեռնարկվող միջոցները, պետք է վերջ տրվի հայերի գոյությանը: Որևէ ուշադրություն մի դարձրեք ո՛չ տարիքին, ո՛չ սեռին և ո՛չ էլ խղճմտանքին» («The Memoirs of Naim Bey. Turkish Official Documents Relating to the Deportations and Massacres of Armenians. Compiled by Aram Andonian, L., 1920, p. 64): Հալեպի կուսակալ Ջելալ բեյը հրաժարվեց այդ կարգադրությունները կատարել՝ ասելով. «Ես այս նահանգի վալին եմ և չեմ կարող նրա դահիճը լինել»: Նա անմիջապես հեռացվեց պաշտոնից և նոր կուսակալ նշանակվեց կատաղի հայատյաց Մուստաֆա Աբդուլհալիք բեյը, որը հայտնի ջարդարար Աբդուլլահաթ Նուրի բեյի հետ միասին անմիջապես գործի անցավ՝ զբաղվելով ոչնչացնելով հայ աքսորյալներին: Դեր Զորում հրեշավոր գազանություններ էր անում նրա կառավարիչ Սալեհ Զեքին, որն ասում էր. «Եթե գիտնայի, որ սա կուրծքիս տակ բաբախող սրտիս մեջ հայերու կարեկցություն ցույց տվող կաթիլ մը արյուն գոյություն ունի, անողորմորեն պիտի պոկեի սիրտս և շուներուն պիտի նետեի» (Գ ա լ ֆ ա յ ա ն Կ., Գիրք եւից հայոց, Բեյրութ, 1955, էջ 518): Նրա օգնականն էր Մահմուդ բեյը, որն անձամբ սպանեց ավելի քան 500 հոգու և մասնավորապես կազմակերպում էր հայ երեխաների ոչնչացման խրախճանք: Ինչպես ամենուրեք, այնպես էլ այստեղ թուրք. ջարդարարներին օգնում էին գերմ. պաշտոնյաներն ու զինվորականները, այդ թվում Մոսուլի շրջանի գերմանացի հրամանատար Շումանը: Միայն փոքրաթիվ հայ աքսորյալներ պահպանեցին իրենց գոյությունը, այն էլ արաբ աշխատավորության օգնությամբ:

Ընդհանուր առմամբ թուրք. կառավարությունը 1915—16-ին կազմակերպեց արևմտահայության մեծ մասի բնաջնջումը, իսկ մնացածին արտաքսեց, կողոպտեց ու ավերեց նրա հինավուրց երկիրը, այնպես որ «Փոքր Ասիայում համարյա հայեր չմնացին: Նրանք կամ կոտորված էին, կամ աքսորված» (ЦГВИА, ф. 2000, оп. 1,



Հայ սովահար ու տանջահար երեխաներ ու մայրեր

ед. хр. 3892, с. 28): Թուրք. բռնակալներն այդպես վարվեցին նաև ասորիների նկատմամբ, կազմակերպեցին հույների ու արաբների ջարդեր, հետո՝ քրդական կոտորածներ: Հայ ժողովուրդն առաջին աշխարհամարտում բոլորից շատ զոհեր տվեց: Եթե 1914-ին՝ պատերազմի նախօրյակին, Օսմանյան կայսրությունում ապրում էր մոտ 2,5—3 մլն հայ, ապա դրանցից ավելի քան 1,5 մլն բնաջնջվեց, իսկ մնացածը տառապելով գաղթեց Անդրկովկաս ու Ռուսաստան, Մերձավոր Արևելքի երկրներ, Եվրոպա ու Ամերիկա, և միայն մի փոքր մասը մնաց Թուրքիայում, բայց նա էլ հետագայում զոհ դարձավ քեմալականներին: Քիչ թվով հայեր մնացին Կ. Պոլսում, իսկ վիլայեթներում հայության մազապուրծ բեկորները բռնի մահմեդականացվեցին: Եթե պատերազմի ժամանակաշրջանի հայկ. կոտորածներին ավելացվեն XIX դ. վերջից Թուրքիայում տեղի ունեցած ջարդերը և 1917—22-ի զանգվածային սպանությունները Թուրքիայում ու Հայաստանում, ապա այդ ամբողջ ժամանակաշրջանում զենոցիդի հայ զոհերի թիվը կհասնի ավելի քան 2 մլն:

Երիտթուրք. ու քեմալական ջարդարարների հանցանքով 1918—20-ին արևելահայությունը ևս կանգնեց լիակատար ֆիզիկական բնաջնջման վտանգի առաջ, և



Հայ կինը զենքով պաշտպանում է իր զավակին

նրան փրկեց միայն Հոկտեմբերյան հեղափոխությունը, որի հաղթական երթը հասավ Հայաստան. «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը, Հայաստանում սովետական իշխանության հաղթանակը հայ ժողովրդին բերեցին իսկական սոցիալական ու ազգային ազատագրություն, արմատական շրջադարձ նշանավորեցին նրա ճակատագրում... Սովետական իշխանության հաղթանակը փրկեց հայ ազգի հնամենի մշակույթը, սոցիալիզմի հաղթանակը վերածնեց այդ տաղանդավոր ժողովրդի հոգևոր կյանքը, լավագույն պայմաններ ստեղծեց նրա բազմակողմանի ծաղկման համար» (Բ ր ե ժ ն և Լ. Ի., Սովետական Հայաստանի 50 տարին, Ե., 1970, էջ 10—11, 20):

Վիթխարի չափերի հասան նաև հայ ժողովրդի նյութական վնասները. պատերազմի ժամանակ արևմտահայությանը պատճառած նյութական վնասները, որոնք հրապարակվեցին 1919—20-ի Փարիզի խաղաղության կոնֆերանսում, կազմեցին 14 մլրդ 598 մլն 510 հզ. ֆրանկ, իսկ արևելահայությանը՝ 4 մլրդ 532 մլն 472 հզ. ֆրանկ: Ոչնչացվեցին ու հրո ճարակ դարձան նյութական ու մշակութային հազարավոր հուշարձաններ ու կոթողներ, հարուստ գրականություն ու ձեռագրեր:

Իրենց պապենական հողերից արտաքսված բազմահոծ հայ զաղթականները ենթարկվեցին դաժան փորձությունների ու անլուր զրկանքների արտասահմանյան երկրներում: Իսկական փրկության դուռ բացեց միայն սովետական պետությունը, որը օգնության ձեռք մեկնեց տարաբախտ սփյուռքահայությանը: Կազմակերպվեց մասսայական հայրենադարձություն դեպի մայր հայրենիք՝ Սովետական Հայաստան (տես *Հայրենադարձություն հայերի*):

Մ. ե-ի գլխավոր հանցավորը թուրք. բռնակալությունն էր: Հայ ժողովրդի դահճապետ Թալեաթը մարդասպանի զոռոզամտությամբ դեռևս 1915-ի օգոստ. 31-ին գոչեց. «Հայկական հարցը լուծելու տեսակետից ես երեք ամսում ավելի շատ գործ կատարեցի, քան Աբդուլ Համիդը երեսուն տարում» (M o r g e n t h a u H., Ambas-

sador Morgenthau's Story, Garden City-New York, 1918, p. 342): Նա գտնում էր, որ իրենց պետք է հանձնել նաև ոչնչացված հայերի նույնիսկ արտասահմանյան բանկերում գտնվող ապահովագրական գումարները: Օսմանյան կառավարողները, անշուշտ, հանցավոր նպատակների համար օգտագործում էին իրենց ժողովրդի հետամնացությունն ու կրոնական մոլեռանդությունը, բայց թուրք, ինչպես նաև քուրդ աշխատավորները, մեղավոր չէին հայկ. կոտորածների կազմակերպման համար: Ավելին, կան փաստեր, երբ նրանք օգնության ձեռք են մեկնել իրենց հարևան ու ծանոթ հայերին, պատսպարել նրանց երեխաներին:

Սուլթանական Թուրքիայի հայաջինջ քաղաքականության մշակման ու իրականացման հովանավորն ու ակտիվ գործակիցն էր կայզերական Գերմանիան: Տխրահռչակ Վանգենհայմը եթե 1915-ի փետրվարին հաղորդում էր իր կառավարությանը՝ «չարգելակել հայերի դեմ ձեռնարկվող քայլերին», ապա հուլիսի 7-ին հեռագրեց կանցլեր Բեթման Հոլվեգին, որ իրագործվում է «թուրքական պետության մեջ հայ ազգի ոչնչացման նպատակը» («Deutshland und Armenien», 1914—1918. Sammlung Diplomatischer Aktenstucke. Herausgegeben und eingeleitet von Dr. Johannes Lepsius, Potsdam, 1919, S. 94): Ինչ վերաբերում է արմ. տերություններին (Անգլիա, Ֆրանսիա, Իտալիա, ԱՄՆ), ապա նրանք փաստորեն վարում էին հայկ. կոտորածների թողտվության ու խրախուսման քաղաքականություն: Նույնիսկ Լլոյդ Ջորջը, մասնավորապես խոսելով անգլ. քաղաքականության մասին, գրել է. «Հայաստանը զոհաբերվեց մեր կողմից բարձրացված հաղթական զոհասեղանին... Բրիտանական կառավարության քաղաքականությունը ճակատագրական անխուսափելիությամբ հասցրեց 1895—1897 թվականների սարսափելի սպանդներին և 1915 թվականի ահավոր կոտորածին» (Ллойд Джордж, Правда о мирных договорах, т. 2, 1957, S. 390): Անգամ Ժորժ Կլեմանսոն ասել է, որ «եվրոպական դիվանագիտության վրա է ծանրանում հայկական արյունը» (ՀՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 57, ց. 2, գ. 709, թ. 40): Միջազգային իմպերիալիզմը Մ. ե-ի հանցավոր է:

Առաջին աշխարհամարտն սկսվեց ու վերջացավ որպես անարդարացի, զավթողական պատերազմ, ուստի և չպատժվեցին նրա հանցավորները, այդ թվում՝ թուրք. ջարդարարները: Թեև դեռ 1915-ի մայիսի 13-ին Ռուսաստանի, Անգլիայի ու Ֆրանսիայի կառավարությունները Թուրքիային ներկայացրին հուշագիր՝ նախազգուշացնելով, որ նրա կառավարողները պատասխանատվություն կկրեն կատարած հանցագործությունների համար, բայց այն մնաց թղթի վրա: Անկատար էր նաև «դաշնակիցների» 1919-ին կազմակերպած դատավարությունը Կ. Պոլսում, և միայն հեռակա կարգով մահվան դատապարտվեցին մի քանի երիտթուրք. գործիչներ, որոնք փախել ու թաքնվել էին Գերմանիայում ու այլ երկրներում: Ճիշտ է, հայ. ժող. վրիժառուների ձեռքով սպանվեցին Թալեաթը, Էնվերը, Ջեմալը, Բեհաեդդին Շաքիրը, Սայիդ Հալիմը, Ջեմալ Ազիմը և ուրիշներ, բայց, դժբախտաբար, տեղի չունեցավ ժողովուրդների դատ, հանցագործները հրապարակայնորեն չպատժվեցին, և պատմական անարդարությունն էլ չուղղվեց: Դա ևս ոգեշնչեց արյունախում Հիտլերին, որը, հետագայում իր հրոսակախմբերին մղելով հրեշավոր սպանությունների, ասաց. «Այսօր է՞լ ով է խոսում հայերի բնաջնջման մասին» (Guttmann Joseph, The Beginnings of Genocide, N. У., 1948, p. 18): Սովետական Միության հաղթանակը Հայրենական մեծ պատերազմում (1941—45) և աշխարհում ուժերի հարաբերակցության փոփոխությունը հօգուտ սոցիալիզմի ու դեմոկրատիայի հասցրին նաև Նյուրնբերգյան դատավարությանը, և մահվան դատապարտվեցին հիտլերյան հանցագործները:

Առաջադեմ մարդկությունը միշտ դատապարտել է գենոցիդը, այդ թվում հայերի զանգվածային կոտորածը առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ՝ որպես «Մեծ եղեռն», «Մեծ ոճիր», «Նորագույն պատմության ամենասև էջ», որի նմանը մինչ այդ չէր տեսել մարդկությունը: Կոմունիստները վճռականորեն մերկացրել են այդ պատերազմի իմպերիալիստական բնույթը և նրա հանցավորների գազանությունները ժողովուրդների դեմ: Բոլշևիկյան կուսակցության առաջնորդ Վ. Ի. Լենինը նշել է, որ պատերազմի կոնֆլիկտներից մեկը հյուսվեց «Հայաստանի ու Կոստանդնուպոլսի» շուրջը (Երկ., հ. 21, էջ 257): Դա խիստ աղետաբեր եղավ հայ ժողովրդի համար: Լենինի, ինչպես նաև Վ. Կոլարովի, Յա. Գանեցկու և ուրիշների ստորագրությամբ 1915-ին ընդունվեց Ցիմերվալդի սոցիալիստական կոնֆերանսի մանիֆեստը, որտեղ խոր ցավակցություն է հայտնվում պատերազմի զոհերի առթիվ, դատապարտվում իմպերիալիստների ոճրագործությունները ժողովուրդների դեմ, դաժան հալածանքները լեհերի, հայերի, հրեաների հանդեպ և մասնավորապես նշվում. «Ամբողջ ժողովուրդների և երկրների, ինչպիսիք են Բելգիան, Լեհաստանը, Բալկանյան պետությունները, Հայաստանը, սպառնում է փոխհատուցումների (կոմպենսացիաների) խաղում առևտրի առարկա դառնալու բախտը և ենթարկվելու անեքսիայի՝ ամբողջովին կամ մաս-մաս» («Циммервальдская и Кинтальская конференции. Официальные документы», Л.—М., 1924, с. 27): Կինտալի կոնֆերանսում նույնպես նշվեց, որ Հայաստանի ողբերգության օրինակով վերստին ակնբախ է դառնում իմպերիալիստական պետությունների նենգամտությունը՝ կեղեքելու ու զոհելու փոքրաթիվ ժողովուրդներին (նույն տեղում, էջ 53—54): Ականավոր բոլշևիկ Ս. Մ. Կիրովը հանդես եկավ հոդվածաշարով, որտեղ անարգանքի սյունին գամեց թուրք. բռնակալներին և մերկացրեց հայերի գլխովին ոչնչացման նրանց հրեշավոր ծրագիրը, շեշտելով, որ չի կարելի մոռանալ «միլիոնավոր մարդկանց ահավոր տանջանքների պատկերը» և պետք է օգնության ձեռք մեկնել «տառապող ժողովրդին», հայ գաղթականությանը («Терек», № 5417, 14.02.1916): Ս. Շահումյանը, Ս. Սպանդարյանը, Ա. Մյասնիկյանը, Ս. Կասյանը, Ա. Մռավյանը և բազմաթիվ հայ բոլշևիկներ խստորեն խարազանեցին օսմանյան կառավարողների հայասպան քաղաքականությունը, իմպերիալիստական պետությունների նենգամիտ ծրագրերը, ինչպես նաև դաշնակցական գործիչների արկածախնդրությունը: Մերկացնելով բոլշևիկների հասցեին եղած զրպարտությունները՝ Ս. Շահումյանը 1916-ին գրել է. «Մենք ուղղում ենք մեր խոսքը հայ բանվորությանը, հայ գյուղացիներին և հայ ժողովրդական ինտելիգենցիային: Դուք միշտ լսել եք մեր հակառակորդներից, թե սոցիալ-դեմոկրատները ազգություն չեն ճանաչում, հայ ազգի մասին չեն ուզում մտածել, թե հայ ժողովրդի մեծ ցավերը նրանց սրտին օտար են... Այդ բոլորը սուտ է կամ խիալ է» (Շահումյան Ստ., Երկ. լիակտ. ժող., հ. 3, 1978, էջ 47): Հիրավի, հենց սկզբից հայ կոմունիստներն ապրել ու գործել են իրենց ժողովրդի ցավերով ու հոգսերով և մարտնչել նրա սոցիալական ու ազգային ազատագրության համար: Նրանք էին, որ դեռ 1903-ին, դատապարտելով օսմանյան բռնատիրությունը, իրենց համերաշխությունը հայտնեցին «բազմաչարչար տաճկահայ ժողովրդի ազատաբար գործին» («Պրոլետարիատի կռիվը», 1903, № 2—3) և ցույց տվին նրա լուծման ճիշտ ուղին, մշտապես իրենց բողոքի ձայնը բարձրացրին թուրք. բարբարոսության դեմ և հնարավոր օգնություն կազմակերպեցին հայ գաղթականներին: Ավելի ուշ, 1917-ին, նրանց ակտիվ մասնակցությամբ Սովետական Ռուսաստանի կառավարությունը՝ Վ. Ի. Լենինի ստորագրությամբ ընդունեց *Դեկրետ «Թուրքահայաստանի» մասին*, որով արևմտահայությանը տրվում էր ազատ ինքնորոշման իրավունք: Այն չիրականացավ, և դրա հանցավորներն էին թուրք. զավթիչները, արևմտյան իմպերիալիստները և Անդրկովկասի հակահեղափոխականները:

Հայերի գենոցիդի դեմ վճռական բողոքի խոսք ասացին միջազգային բանվորական շարժման ականավոր գործիչները: Կ. Լիբկնեխտը, դատապարտելով Օսմանյան կայսրությունում կազմակերպված հրեշավոր սպանդը, շեշտեց, որ դրա հանցավորները գերմանա-թուրք. կառավարողներն են, որոնց ձեռքերը թաթախվել են «հայերի արյան մեջ» (Либкнехт К., Мой процесс по документам, П., 1918, с. 54): Նույն ոգով հանդես եկան Մ. Կաշենը, Է. Լոնգեն (Կ. Մարքսի թոռը) և ուրիշներ: Բողոքի հուժկու ելույթներ ունեցան նշանավոր գրողներ ու գիտնականներ Մ. Գորկին, Վ. Բրյուսովը, Յա. Ռայնիսը, Ա. Ֆրանսը, Ռ. Ռոլանը, Է. Վերհարնը, Ջ. Ռիդը, Յո. Մարկվարտը, Յո. Լեփսիուսը, Ժ. դը Մորգանը, Ա. Մեյեն, Ֆ. Նանսենը, Հ. Գիբբոնսը, Ա. Բարբին, Ա. Վեգները, ինչպես նաև Ջ. Բրայսը, Ա. Թոյնբին, Հ. Մորգենթաուն, Ֆ. էլ-Ղոսեյնը և շատ ուրիշներ: Հետագայում էլ երբեք չլռեց առաջադեմ մարդկության խղճի ու մտքի ձայնը Մ. ե-ի առթիվ: ՍՄԿԿ Կենտկոմի կենտրոնական օրգան

«Պրավդա»-ն 1965-ի ապրիլի 24-ին գրեց, որ «հիսուն տարի առաջ երիտթուրքերի կառավարությունը ոչնչացրեց մոտ մեկուկես միլիոն հայերի», և դա կատարվեց իմպերիալիստական Գերմանիայի աջակցությամբ ու հովանավորությամբ (տես՝ Մ. Ներսիսյանի և Ն. Ուլչակովի հոդվածը՝ «Գենոցիդը ծանրագույն հանցագործություն է մարդկության դեմ»): Ֆրանսիայի կոմկուսի կենտրոնական օրգան «Յումանիտե»-ն նույն թվականի ապրիլի 23-ին նշեց, որ հայերի մասսայական կոտորածը «ցեղասպանության առաջին ոճիրն էր XX դ. սկզբին՝ 1914—18 թթ. պատերազմի ընթացքում: Եվ այդ ոճիրը երբեք չդատվեց ու չդատապարտվեց: Այդ պատճառով է, որ հայերը, բոլորից ավելի գնահատելով խաղաղությունը, չեն կարող մոռանալ այդ իրողությունը, որը մի սովորական հուշ չէ, այլ մի պատմական տարեթիվ և կարող էր մի ամբողջ ազգի վախճանը դառնալ»: Մ. ե. գենոցիդի կատաղի դրսևորումն էր առաջին աշխարհամարտի ժամանակ, և արաբ իրավաբան Մեթր Մուսա Պրենսն այն անվանել է «արմենոցիդ» («հայասպանություն»): Գենոցիդը լայն չափերի հասավ երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ, և նրա հանցավորները՝ գերմ. ֆաշիստների պարագլուխները, խստորեն պատժվեցին: Այնուհետև ընդունվեցին մի շարք միջազգային որոշումներ, և մասնավորապես Միավորված ազգերի կազմակերպության Գլխավոր ասամբլեան 1948-ի դեկտ. 9-ին հաստատեց «Կոնվենցիա՝ գենոցիդի հանցագործությունը կանխելու և դրա համար պատժելու մասին»: Գենոցիդը ծանրագույն հանցագործություն է մարդկության ու մարդկայնության դեմ, հետևապես նրա հանցավորների վրա չի կարող տարածվել վաղեմիության իրավունքը: Ֆրանսիացի հռչակավոր սոցիալիստ Ժ. Ժորեսը նշել է, որ մարդկությունը չի կարող իր մառանի մեջ պահել հայասպանության ոճիրը: Այն նոր ժամանակների առաջին մասսայական գենոցիդն էր, և նրա հանցավորները պետք է դատապարտվեն միջազգային պաշտոնական փաստաթղթերով, պատմական անարդարությունը պետք է ուղղվի: Այդ մասին են հիշեցնում բազմաքանակ անհերքելի փաստերը, ինչպես նաև Մ. ե-ի զոհերի հիշատակին կառուցված կոթողներն ու հուշարձանները Սովետական Հայաստանում ու աշխարհի տարբեր երկրներում:

*Գրկ.* Լենին Վ. Ի., Ուրիշի դրոշի տակ, Երկ. լիակտ. ժող., հ. 26: Նույնի, II Ինտերնացիոնալի կրախը, նույն տեղում: Маркс К. и Энгельс Ф., Британская политика. Дизраэли. Эмигранты. Мадзини в Лондоне. Турция, Соч., 2 изд., т. 9; Энгельс Ф., Турецкий вопрос, նույն տեղում: Նույնի, И. Н. Атабекянцу, նույն տեղում, т. 39; Ленин В. И., О Закавказье, Е., 1963; Բրեժնև Լ. Ի., Սովետական Հայաստանի 50 տարին, Ե., 1970: Շահումյան Ստ., Երկ. լիակտ. ժող., հ. 3, Ե., 1978: Սպանդարյան Ս., Երկ., հ. 2, Ե., 1959: Մյասնիկյան Ա., Ընտիր երկ., Ե., 1957: Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծեր, Ե., 1967: Լեո, Թուրքահայ հեղափոխության գաղափարաբանությունը, հ. 2, Փարիզ, 1935: Սարգսյան Ե. Ղ., Սահակյան Ռ. Գ., Հայ ժողովրդի նոր շրջանի պատմության նենգափոխումը թուրք պատմագրության մեջ, Ե., 1963: Կիրակոսյան Ջ. Ս., Առաջին համաշխարհային պատերազմը և արևմտահայությունը. 1914—1916 թթ., Ե., 1965: Հայաստանը միջազգային դիվանագիտության և սովետական արտաքին քաղաքականության փաստաթղթերում (1828—1923), պրոֆ. Ջ. Կիրակոսյանի խմբագրությամբ, Ե., 1972: Արզումանյան Մ. Վ., Հայաստան. 1914—1917, Ե., 1969: Նույնի, Արհավիրքից վերածնունդ, Ե., 1973: Աղայան Ծ. Պ., Հայ ժողովրդի ազատագրական պայքարի պատմությունից, Ե., 1976: Դատավարություն Թալեաթ փաշայի, Վնն., 1921: Հուշամատյան մեծ եղեռնի, Բեյրութ, 1965: «Правда» об Армении, Е., 1973; Циммервальдская и Кинтальская конференции. Официальные документы, Л.—М., 1924; История дипломатии, т. 3, М., 1965; История СССР с древнейших времен до наших дней, первая серия, т. 6, М., 1968; Геноцид армян в Османской империи. Сб. документов и материалов под ред. проф. М. Нерсисяна, Е., 1966; Либкнехт К., Мой процесс по документам, П., 1918; Тарле Е. В., Европа в эпоху империализма, 1871—1919 гг., М.—Л., 1928; Борьян Б. А., Армения, международная дипломатия и СССР, ч. 1, М.—Л., 1928; Живелегов А. К., Армения и Турция, М., 1946; Ллойд Дж., Правда о мирных договорах, т. 2, М., 1957; Готлиб В. В., Тайная дипломатия во время первой мировой войны, М., 1960; Армянский вопрос перед мирной конференцией, Екатеринодар, 1919; Барби Анри, В стране ужаса. Мученица Армения, пер. с франц., Тифлис, 1919; Гиббонс Герберт Адамс, Последние избиения в Армении. Факты и ответственности, пер. с англ., П., 1916; Ошеровский Л. Я., Трагедия армян-беженцев, Пятигорск, 1915; Мандельштам А. Н., Младотурецкая держава. Историко-политический очерк, М., 1915; На пути от Харберта до Урфы, М., 1917; Оборона Вана. 7 апреля—4 мая 1915 г., М., 1917; Раздел азиатской Турции. По секретным документам б. Министерства иностранных дел. Под ред. Е. А. Адамова, М., 1924; Саркисян Е. К., Экспансионистская политика Османской империи в Закавказье накануне и в годы первой мировой войны, Е., 1962; Сборник дипломатических документов. Реформы в Армении, 26 ноября 1912 года — 10 мая 1914 года, П., 1915; Barby Henry, Au pays de l' épouvante L' Arménie martyre, P., 1917; Faiez el-Ghocéin, Témoignage d'un Arabe musulman sur l'innocence et le massacre des Arméniens. Trad. de l'arabe par A. El—G., [Bombay], 1917; Mandelstam A., La Société des Nations et les Puissances devant le probléme arménien, P., 1925; Pinon R., La suppression des arméniens. Méthode allemande-travail turc, P., 1916; Gibbons Herbert Adams, The Blackest Page of Modern History. Events in Armenia in 1915. The Facts and the Responsibilities, N. Y., 1916; Guttmann Joseph, The Beginnings of Genocide, A Brief Account of the Armenian Massacres in World War I, N. Y., 1948; The Memoirs of Naim Bey. Turkish Official Documents Relating to the Deportations and Massacres of Armenians, L., 1920; Morgenthau H., Ambassador Morgenthau's Story, N. Y., 1918; Nansen F., Armenia and the Near East, N. Y., 1928; Sarkisian E. K. and Sahakian R. G., Vital Issues in Modern Armenian History, A Documented Expose of Misrepresentations in Turkish Historiography, Watertown, Massachusetts, 1965; Boyajian D., Armenia the Case for a Forgotten Genocide, Westwood, New Jersey, 1972; Toynbee A., Armenian Atrocities. The Murder of a Nation. With a Speech Delivered by Lord Bryce in the House of Lords, L.—N. Y.—Toronto, 1915; The Treatment of Armenians in the Ottoman Empire 1915—16. Documents Presented to Viscount Grey of Fallodon by Viscount Bryce. With a Preface of Viscount Bryce, L., 1916; Deutschland und Armenien, 1914—1918, Sammlung diplomatischer Aktenstücke. Herausgegeben und eingeleitet von Dr. Johannes Lepsius, Potsdam, 1919; Lepsius Johannes, Bertcht über die Lage des armenischen Volkes in der Türkei, Potsdam, 1916; Marquart J., Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, B.—Schöneberg, 1919; Nansen Fridjof, Betrogenes Volk, Lpz., 1928; Der Prozess Talaat Pascha, Stenographischer Bericht mit einem Vorwort von Armin T. Wegner und einem Anhang, B., 1921; Werfel Franz, Die vierzig Tage des Musa Dagh. Roman. B. 1—2, B.—Wien—Lpz., 1933; Brentjes B., Drei jahrtausende Armenien, Lpz., 1976.

*Մ. Արզումանյան*

**ՄԵԾ ՁԱԳ**, գետ Հայկական լեռնաշխարհում, Տիգրիսի ձախ վտակը: Սկիզբ է առնում Կորդվաց լեռների Աղբակ (Մենգենե) լեռնաշղթայի հվ-արլ. լանջերից: Վերին հոսանքում (հայտնի է նաև Աղբակ անունով) անցնում է Աղբակի գոգհովտով, կտրում Հաքյարիի լեռնաշղթան, առաջացնում խորը, անտեցեդենտ հովիտ, ապա ճեղքում ավելի ցածր լեռնաշղթաներ և դուրս գալով Միջագետքի հարթավայր, միանում Տիգրիսին: Երկարությունը 473 *կմ* է, ավազանը՝ 26,2 հզ. *կմ*²: Սնումը ձնաանձրևային է, հորդացումը՝ ապրիլ—մայիսին: Տարեկան միջին ծախսը գետաբերանի մոտ 403 *մ*³/*վրկ* է: Միջին հոսանքում կառուցված է ջրամբար: Ջրերը օգտագործվում են ոռոգման նպատակով:

*Յ. Գևորգյան*

**ՄԵԾ ԹԱՂԼԱՐ**, Նոր Թաղլար, գյուղ ԼՂԻՄ-ի Հադրութի շրջանում, շրջկենտրոնից 17 *կմ* հյուսիս: Սովետական տնտեսությունն զբաղվում է խաղողագործությամբ, թթենու մշակությամբ, հացահատիկային և բանջարանոցային կուլտուրաների մշակությամբ, անասնապահությամբ, շերամապահությամբ: Կա խաղողի ընդունման և նախնական վերամշակման գործարան, գորգագործական արհեստանոց: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կինո, 2 մանկապարտեզ, փոստի բաժանմունք, ՍՍՀՄ ավիացիայի մարշալ Ս. Ա. Խուդյակովի (Խանփերյանց) հուշաթանգարան: Մ-ի շրջակայքում պահպանվել են Գտչավանքը (XIII դ.), Հանգած եղցի եկեղեցին (VII դ.), բազիլիկաձև մատուռը (XVI դ.), Իշխնեցեք (XVI դ.), Մայր խաթուն (V դ.) պարըսպապատ գյուղատեղիները, Իշխանագետի կամուրջը (XVIII դ.): Գյուղի մոտ են մի շարք քարայր-բնակավայրեր, որտեղ հայտնաբերված իրերը վերաբերում են մուստիերյան շրջանին:

**ՄԵԾ ԹԱՏՐՈՆ ՍՍՀՄ**, պետական ակադեմիական ՍՍՀՄ Մեծ թատրոն, սովետական օպերայի և բալետի առաջատար թատրոն, ռուսական, սովետական և համաշխարհային երաժշտա-թատերական մշակույթի խոշորագույն կենտրոն: Թատերախումբը կազմա-

կերպվել է 1776-ին Մոսկվայում: Ներկայացումները տրվել են կոմս Ռ. Վորոնցովի տանը: 1780-ին թատրոնը տեղափոխվել է Պետրովկա փողոցի անկյունում կառուցված շենքը (այժմյան Մ. թ-ի տեղում) և անվանվել «Պետրովկայի թատրոն»: 1805-ին հրդեհվել է: 1806-ից թատրոնը դարձել է պետ.: 1824-ին կառուցվել է (հնի տեղում) 8-սյունանի շքամուտքով և ճակտոնից վեր Ապոլլոնի քառաձի մըրցակառքով (քանդակագործ՝ Պ. Կլոդտ) թատրոնի նոր, մոնումենտալ շենք (օգտագործվել է Ա. Միխայլովի նախագիծը, ճարտ. Օ. Բովե), որը, լինելով ռուս. ամպիրի ճարտ. լավագույն հուշարձաններից, իր մեծությամբ (այստեղից՝ անունը) երկրորդն էր Եվրոպայում (Միլանի «Լա Սկալա»-ից հետո): Բացվել է 1825-ին: 1853-ի հրդեհից վնասված շենքը վերականգնվել է ճարտ. Ա. Կավոսի նախագծով (1856):

Մ. թ. մեծ դեր է խաղացել ռուս. մինչհեղափոխական, ապա՝ սովետական օպերային և բալետային արվեստի զարգացման գործում: Մ. թ-ի բեմում ներկայացվել են ռուս կոմպոզիտորների առաջին օպերաները, ցո ցադրվել արևմտաեվրոպական լավագույն օպերաներն ու բալետները: Սկզբունքային նշանակություն են ունեցել Մ. Գ ինկայի, Ա. Դարգոմիժսկու, Ա. Ռուբինշտեյնի, Ա. Սերովի, Պ. Չայկովսկու, Մ. Մուսորգսկու, Ն. Ռիմսկի-Կորսակովի, Ա. Բորոդինի օպերաների, Պ. Չայկովսկու, Ա. Գլազունովի բալետների բեմադրությունները: Իբրև դիրիժորներ հանդես են եկել Ա. Ռուբինշտեյնը, Պ. Չայկովսկին, Ս. Ռախմանինովը, Վ. Սուկը: XX դ. սկզբին նրա բեմում փայլել են երգիչներ Ֆ. Շալյապինը, Ա. Նեժդանովան, Լ. Սոբինովը, բալետի մենապարողներ Ե. Գելցերը, Ս. Ֆեոդորովան և ուրիշներ, ներկայացումներ են ձևավորել Ա. Գոլովինը, Կ. Կորովինը: Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունից հետո Մ. թ. մատչելի է դարձել աշխատավորների լայն զանգվածների համար: 1919-ից կոչվել է ակադեմիական, 1924-ից՝ ունեցել մասնաճյուղ: Ռուս. և արևմտաեվրոպական դասական ստեղծագործությունների կողքին Մ. թ-ում իրականացվել են ռուս սովետական կոմպոզիտորների (Ս. Պրոկոֆև, Դ. Շոստակովիչ, Ի. Ձերժինսկի, Ռ. Գլիեր, Բ. Ասաֆև), ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդների, սոցիալիստական երկրների և ժամանակակից արևմտաեվրոպական կոմպոզիտորների երկերի բեմադրությունները: Մ. թ. հետևողականորեն իրականացնում է ժողովրդականության և ռեալիզմի սկզբունքները: Մ. թ-ի հետ անխզելիորեն կապված է աչքի ընկնող դիրիժորներ Ն. Գոլովանովի, Ս. Սամոսուդի, Բ. Խայկինի, Գ. Ռոժդեստվենսկու, Ա. Մելիք-Փաշաևի, երգիչներ Ն. Օբուխովայի, Ք. Դերժինսկայայի, Ս. Լեմեշևի, Վ. Բարսովայի, Ի. Կոզլովսկու, Ա. Պիրոգովի, Մ. Միխայլովի, Պ. Լիսիցյանի, Ի. Արխիպովայի, Ե. Օբրազցովայի, Ե. Նեստերենկոյի, մենապարողներ Մ. Սեմյոնովայի, Ա. Երմոլաևի, Օ. Լեպեշինսկայայի, Գ. Ուլանովայի, Մ. Պլիսեցկայայի, Վ. Վասիլևի, Ե. Մաքսիմովայի, Մ. Լիեպայի, թատերական նկարիչներ Ֆ. Ֆեդորովսկու, Ս. Վիրսալաձեի,



ՍՍՀՄ Մեծ թատրոնի շենքը (1821—24, ճարտ-ներ՝ Օ. Ի. Բովե, Ա. Ա. Միխայլով, 1855—56-ին վերակառուցել է Ա. Կ. Կավոսը)

բալետմայստերներ Լ. Լավրովսկու, Յու. Գրիգորովիչի, ռեժիսորներ Բ. Պոկրովսկու, Ի. Տումանովի արվեստը: Մ. թ-ի թատերախումբը համաշխարհային հըռչակ է վայելում, ավելի քան 50 անգամ հյուրախաղերի է մեկնել աշխարհի տարբեր երկրներ: Անգնահատելի է նրա ավանդը սովետական բազմազգ ժողովրդի թատերական-օպերային արվեստի զարգացման գործում: 1961-ից մասնաճյուղի փոխարեն Մ. թ-ին է տրամադրվել նաև Կրեմլի Համագումարների պալատի բեմահարթակը: 1937-ին և 1976-ին Մ. թ. պարգևատրվել է Լենինի շքանշանով: Մ. թ-ում անց են կացվում համագումարներ, կոնֆերանսներ, հանդիսավոր նիստեր:

Մ. թ. սերտ կապեր ունի հայ արվեստի հետ: 1924-ի հունվ. 6-ին և 13-ին Մ. թ-ում կայացել են Ա. Սպենդիարյանի հեղինակային համերգները՝ Մ. թ-ի սիմֆոնիկ նվագախմբի մասնակցությամբ և հեղինակի ղեկավարությամբ: 1926-ին Կ. Սարաջևը ղեկավարել է Մ. թ-ի նվագախմբի համերգը: 1930-ին Մ. թ-ի մասնաճյուղում կայացել է Ա. Սպենդիարյանի «Ալմաստ» օպերայի անդրանիկ բեմադրությունը: Մ. թ-ի լավագույն ներկայացումների թվին են պատկանում Ա. Խաչատրյանի «Գայանե», «Սպարտակ». Ա. Բալասանյանի «Լեյլի և Մեջնուն» բալետները: 1939-ին և 1956-ին Հայ արվեստի և գրականության տասնօրյակներին Մ. թ-ի բեմում ցուցադրվել են Երևանի օպերայի և բալետի թատրոնի լավագույն ներկայացումներից՝ Ա. Սպենդիարյանի «Ալմաստ», Ա. Տիգրանյանի «Անուշ» և «Դավիթ Բեկ», Տ. Չուխաճյանի «Արշակ Բ», Հ. Ստեփանյանի «Լուսաբացին», Պ. Չայկովսկու «Պիկովայա դամա» օպերաները, Ա. Խաչատրյանի «Երջանկություն» և Գ. Եղիազարյանի «Սևան» բալետները, տասնօրյակների եզրափակիչ համերգները: Մ. թ-ում տեղի են ունեցել Հ. Թումանյանի ծննդյան 100-ամյակին նվիրված համերգներ և Երևանի օպերային թատրոնի ներկայացումների ցուցադրում (1969), նշվել են Կոմիտասի, Ա. Սպենդիարյանի, Մ. Սարյանի և հայ մշակույթի այլ մեծ գործիչների հոբելյանները: Կրեմլի Համագումարների պալատի բեմում կայացել են Երևանի օպերային թատրոնի հյուրախաղերը (1976): Երկար տարիներ Մ. թ-ի դիրիժոր (նաև՝ գլխավոր դիրիժոր) է եղել Ա. Մելիք-Փաշաևը, առաջատար երգիչ՝ Պ. Լիսիցյանը: Մ. թ-ի եռանդուն գործիչների թվում տարբեր տարիներ եղել են Ա. Կոպիլովը (դիրիժոր), Դ. Բեղրոսյանը (մեներգիչ), Գ. և Ե. Ֆարմանյանցները (բալետի մենապարողներ), Հ. Մեսիայանը (փող, կոռնետ-ա-պիստոն), Ս. Ամեդյանը (հոբոյ), Ռ. Բաղդասարյանը (կլառնետ), Ռ. Մատիկյանը (զալարափող), Գ. Տերպողոսովը (ջութակ), Գ. Վարդապետովը (թավջութակ), Ա. Էլդարովա-Սարաջևան և Կ. Սարաջևան (տավիղ), Ա. Գրիգորյանը (փող), Ա. Գալստյանը (ֆագոտ), Ա. Գրիգորյանը (հարվածային գործիքներ) և ուրիշներ: Հայ գործիչներից Մ. թ-ի բեմադրություններին մասնակցելու են հրավիրվել ռեժիսոր Ռ. Սիմոնովը, դիրիժորներ Մ. Թավրիզյանը, Յու. Դավթյանը, երգիչներ Հ. Դանիելյանը, Գ. Գասպարյանը, Մ. Երկաթը, Գ. Գալաչյանը, հայ երիտասարդ դիրիժորներ և երգիչներ եղել են Մ. թ-ի ստաժորներ:

*Գրկ.* Шавердян А. И., Большой театр Союза ССР, М., 1952; Государственный ордена Ленина академический Большой театр Союза ССР. (Сб. ст.), М., 1947; Большой театр Союза ССР. (Опера. Балет), М., 1958; Большому театру СССР 200 лет. 1776—1976, М., 1976; Грошева Е. А., Большой театр Союза ССР, М., 1978.

*Ա. Բուդաղյան*

**ՄԵԾ ԹՎԵՐԻ ՕՐԵՆՔ** մաթեմատիկայում, *հավանականությունների տեսության* ընդհանուր սկզբունք, ըստ որի՝ մեծ թվով պատահական գործոնների համատեղ արդյունքը, որոշ, բավականաչափ ընդհանուր դեպքերում, ըստ էության պատահական չէ (համարյա կախված չէ դիպվածից): Մ. թ. օ-ի ճշգրիտ մաթեմատիկական ձևակերպումը և կիրառման պայմանները, որ տրվում են հավանականությունների տեսության մեջ, արտահայտվում է մի շարք թեորեմների ձևով: Առաջին խստիվ ապացուցված թեորեմը պատկանում է Յա. *Բեռնուլիին*: Այն ձևակերպվում է այսպես.

Եթե ունենք անկախ փորձերի հաջորդականություն, որոնցից յուրաքանչյուրում A պատահույթի հանդես գալու հավանականությունը միևնույն $P(0<P<1)$ թիվն է, ապա ցանկացած $\varepsilon(\varepsilon>0)$ թվի համար՝ $\lim_{n\to\infty} P\left\{\left|\frac{\mu_n}{n}-P\right|>\varepsilon\right\}=0$, այստեղ $\mu_n$-ը առաջին n փորձերում A-ի հանդես գալու թիվն է ($\frac{\mu_n}{n}$-ը՝ հաճախությունը):

Այս թեորեմը հետագայում ընդհանրացրել է Ս. *Պուասոնը*, որի աշխատություններից մեկում և առաջին անգամ հանդես է եկել «Մ. թ. օ.» տերմինը: Պ. *Չեբիշևը* տվել է ինչպես «Մ. թ. օ.» տերմինի ավելի ընդհանուր ըմբռնումը, այնպես էլ՝ Պուասոնի ստացած թեորեմի, ինչպես նաև՝ ավելի ընդհանուր թեորեմի ապացուցումը: Մ. թ. օ-ին վերաբերող այդպիսի թեորեմներից մեկը կարելի է ձևակերպել այսպես.

Եթե ունենք $X_1, X_2, \ldots, X_n, \ldots$ անկախ պատահական մեծություններ, որոնք ունեն սահմանափակ դիսպերսիա $(DX_n \leqslant C)$, ապա նրանց

$$X_n=\frac{X_1+X_2+\ldots+X_n}{n}$$

թվաբանական միջինը 1-ին մոտ հավանականությամբ ցանկացած չափով քիչ է

տարբերվում (շեղվում) այդ պատահական մեծությունների EXn մաթ. սպասումների

$$A_n = \frac{EX_1 + EX_2 + \ldots + EX_n}{n}$$

միջինից՝

$$\lim_{n\to\infty} P\left\{|\overline{X}_n - A_n| > \varepsilon\right\} = 0:$$

Մ. թ. օ. ապահովում է թերմոդինամիկական մեծությունների (օրինակ՝ ճնշման, ջերմաստիճանի) արժեքների կայունությունը. այլ կերպ ասած, այդ մեծությունները կախված չեն գազի կամ հեղուկի առանձին մոլեկուլների կինետիկ պարամետրերի ֆլուկտուացիաներից:

Մ. թ. օ-ի տարբեր տեսքերին վերաբերող ավելի ընդհանուր թեորեմներ ապացուցել են Ա. Մարկովը, Ս. Բեռնշտայնը, Ա. Խինչինը, Ա. Կոլմոգորովը, է. Բորելը:

Տնտեսագիտության մեջ և սոցիալ-տնտեսական վիճակագրությունում, զանգվածային սոցիալ-տնտեսական պրոցեսների օրինաչափությունների ձևավորմանը նպաստող (և նրանց հիմքում ընկած) կարևորագույն օբյեկտիվ օրենքներից մեկը: Հանդես է գալիս որպես ուսումնասիրվող երևույթների թվաքանակի և այդ երևույթներին ներհատուկ ընդհանուր օրինաչափությունների դրսևորման աստիճանի միջև կապի ձև. որակապես համասեռ համախմբություններում (այդ համախմբությունները կազմված են եզակի պատահական երևույթներից) օրինաչափությունները հանդես են գալիս (և հետևաբար՝ կարող են ուսումնասիրվել) միայն եզակի պատահական երևույթների շատ մեծ քանակության դեպքում:

Վիճակագրության մեջ Մ. թ. օ. ընտրանքային մեթոդի հիմքն է. բավականաչափ մեծ ծավալով ընտրանքի դեպքում, հատկանիշի ընտրանքային ընդհանրացնող ցուցանիշները շատ մոտ են գլխավոր համակցության ընդհանրացնող ցուցանիշներին: *Ս. Պողոսյան, Ա. Կոստանյան*

**ՄԵԾ ԼՃԵՐ** (Great Lakes), խոշոր լճերի խումբ Հյուսիսային Ամերիկայի արևելյան մասում, ԱՄՆ-ում և Կանադայում: Ընդգրկում է Վերին, Հուրոն, Միչիգան, Էրի և Օնտարիո լճերը: Ընդհանուր մակերեսը 245,2 հզ. *կմ*², ավազանը՝ 768 հզ. *կմ*², ջրի ծավալը՝ 22725 *կմ*³: Քաղցրահամ ջրերի մեծ կուտակարաններ են: Ունեն տեկտոնական-սառցադաշտային ծագում:

| Անվանումը | Բարձրությունը ծովի մակերևույթից, *մ* | Մակերեսը, հզ. *կմ*² | Առավելագույն խորությունը, *մ* |
|---|---|---|---|
| Վերին | 183 | 82,4 | 393 |
| Հուրոն | 177 | 59,6 | 208 |
| Միչիգան | 177 | 58,0 | 281 |
| Էրի | 174 | 25,7 | 64 |
| Օնտարիո | 75 | 19,5 | 236 |

Մ. լ. իրար հետ կապված են կարճ, սահանքավոր ու ջրառատ գետերով: Էրին Օնտարիոյի հետ միացնող Նիագարա գետի վրա է համանուն ջրվեժը: Մ. լ-ի մեջ են թափվում հարյուրավոր փոքր գետեր: Լճերից արտահոսքը կատարվում է Օնտարիո լճից սկիզբ առնող Ս. Լավրենտիոս գետով: Սառցակալվում են ափամերձ գոտում՝ դեկտեմբերից ապրիլ: Ջուրը թափանցիկ է, նրանում լուծված նյութերի քանակը՝ քիչ (0,06—0,13 *գ/լ*): Լճերում նավարկության տևողությունը 8—9 ամիս է, ջրային ուղիների երկարությունը՝ 1873 *կմ* (Դուլութ նավահանգստից մինչև Ս. Լավրենտիոս գետի ակունքը): Մակարդակի տատանումները կարգավորվում են արհեստականորեն: 1959-ին ջրանցքների վերակառուցումից հետո ստեղծվել է մոտ 3000 *կմ* երկարությամբ ջրային ուղի՝ Մ. լ-ից մինչև Ատլանտյան օվկիանոս: Մ. լ. հարուստ են ձկներով (173 տեսակ): Արդյունագործական նշանակություն ունեն սիգը և կարմրախայտը: Հվ-ից և հվ-արլ-ից Մ. լ-ին են հարում ԱՄՆ-ի և Կանադայի խիտ բնակեցված արդ., hս-ից և արմ-ից՝ գյուղատնտ. հումքային շրջանները: Մ. լ-ի ափերին են Դուլութ, Միլուոկի, Չիկագո, Քլիվլենդ, Էրի, Բուֆալո (ԱՄՆ), Պորտ Արտուր, Ֆորտ Ուիլյամ, Տորոնտո (Կանադա) նավահանգիստները:

**ՄԵԾ ԽԱՆՉԱԼԻ**, հայաբնակ գյուղ Վրացական ՍՍՀ Բոգդանովկայի շրջանում, շրջկենտրոնից 3,5 *կմ* հարավ-արևմուտք: Կոլտնտեսությունն զբաղվում է անասնապահությամբ, հացահատիկային և կերային կուլտուրաների, կարտոֆիլի մշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, գրադարան, կուլտուրայի տուն, մանկապարտեզ: Բնակիչների նախնիները եկել են Էրզրումի նահանգից, 1828-ին: Կա եկեղեցի (XIX դ.):

**ՄԵԾ ԿԱԼԱԴԱՐԱՍԻ** (Մեծ Բերդաձոր), գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Շուշիի շրջանում, շրջկենտրոնից 35 *կմ* հարավ-արևմուտք: Կոլտնտեսությունն զբաղվում է հացահատիկային կուլտուրաների և կարտոֆիլի մշակությամբ, բանջարաբուծությամբ, անասնապահությամբ, մեղվաբուծությամբ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, կինո, փոստ, բուժկայան:

**ՄԵԾ ԿԱՆԻՈՆ** (Grand Canyon), Կոլորադոյի Մեծ Կանիոն, գտնվում է Արիզոնա նահանգում (ԱՄՆ), Կոլորադո գետի միջին հոսանքում: Աշխարհի ամենախոր կանիոններից է: Երկարությունը 320 *կմ* է, խորությունը՝ մինչև 1800 *մ*, լայնությունը՝ սարահարթի մակերևույթին 8—25 *կմ*, գետի ջրագծի կտրվածքում՝ 1 *կմ*-ից պակաս (առանձին հատվածներում մինչև 120 *մ*): Կոլորադո գետը Մ. կ-ում հոսում է 25 *կմ/ժ* արագությամբ և ունի 1,5 *մ* անկում (1 *կմ*-ի վրա): Մ. կ. տուրիզմի վայր է, ազգային պարկ:

**ՄԵԾ ԿՈՎԿԱՍ**, լեռնային համակարգ Սև և Կասպից ծովերի միջև: Երկարությունը 1100 *կմ* է, լայնությունը՝ մոտ 180 *կմ*, տարածությունը՝ մոտ 145 հզ. *կմ*²: Ձգվում է Անապա քաղաքից մինչև Սումգաիթի գետաբերանը: Ալպյան ծալքման խոշոր մեգաանտիկլինորիում է՝ կազմված առանցքային գոտուց, հս. և հվ. լանջերից: Առանցքային գոտին ամենաբարձրն է: Նրա միջին մասում մերկանում են հնագույն բյուրեղային ապարները, որոնք ծայրամասերում թաղվում են մեզոզոյի և կայնոզոյի նստվածքային ապարների տակ: Առանցքային գոտում լավ արտահայտված են Գլխավոր կամ Ջրբաժան և Կողքային լեռնաշղթաները: Մ. Կ. բաժանվում է Արևմտյան (մինչև Էլբրուս, 5642 *մ*), Կենտրոնական (մինչև Կազբեկ, 5033 *մ*) և Արևելյան (Կազբեկից արևելք) մասերի:



Մեծ Կովկասի հյուսիսային լանջը. ետին պլանում՝ Էլբրուսը

Արևմտյան մասը, մինչև Փսեաշխո զագաթը, կոչվում է Սևծովյան կամ Պոնտական լեռնաշղթա. կազմված է կրաքարերից ու ավազաքարերից և խիստ ծալքավորված է: Փսեաշխոյից մինչև Էլբրուս ձգվում է Կովկասի Արխազա-Կուբանյան մասը: Կատարային գոտում մերկանում են մինչքեմբրի և պալեոզոյի բյուրեղային ապարները: Տարածված են ռելիեֆի սառցադաշտային ձևերը:

Կենտրոնական մասը Կովկասի հնագույն և ամենաբարձր հատվածն է, որտեղ 15 գագաթներ գերազանցում են Մոնբլանին: Այստեղ Ջրբաժան և Կողքային լեռնաշղթաների հեռավորությունը իրարից 15—20 *կմ* է, որոնք հաճախ միանում են միջնորմերով և առաջացնում զոգավորություններ: Գագաթներից են Ուշբան (4700 *մ*), Դիխթաուն (5203 *մ*), Շխարան (5068 *մ*): Ցածրադիր մասը Խաչի լեռնանցքն է (2379 *մ*):

Արևելյան մասն սկսվում է Շան գագաթից, անցնում Փշավ—Խևսուրյան շղթայով և հասնում Բաբբալո, որից հետո ցածրանալով վերջանում է Իլխիդաղով: Կազմված է յուրայի հասակի թերթաքարերից ու ավազաքարերից: Այստեղ Կողքային լեռնաշղթան հաճախ ավելի բարձր է, քան Ջրբաժանը: Գագաթներից են՝ Թեբուլոսմթան (4493 *մ*), Դիկլոսմթան (4285 *մ*), Բազարդյուզյուն (4466 *մ*), Բաբադաղը (3629 *մ*), Շահդաղը (4243 *մ*):

Սառցադաշտեր Մեծ Կովկասի Ջրբաժան լեռնաշղթայում



Մ. Կ-ի հս. լանջը բաժանված է բազմաթիվ ճյուղավորությունների: Առանձնացվում են երեք շարք միաթեք կուեստային լեռնաշղթաներ՝ Ժայռոտ լեռներ, Սև լեռներ և Արոտավայրային լեռնաշղթա: Արլ. մասում հս. լանջը կազմում է Դաղստանի լեռնային երկիրը, որտեղ ձգվում են Անդյան, Գիմրինի, Մ. Կ-ի Ջրբաժան ու Կողքային լեռնաշղթաները, ներքին Դաղստանում՝ Բոգոսյան, Նուկաթլի, Սամուրի լեռնաշղթաները:

Մ. Կ-ի հվ. լանջը կազմված է փետրաձև դասավորված լեռնաշղթաներից: Արմ-ում, մինչև Սուրամի լեռնաշղթան, Ջրբաժան շղթայից անջատվում են Գագրայի, Բզիբի, Չխալթայի, Կոդորի, Սվանեթիայի, Էգրիսի, Լեչխումի, Ռաճայի լեռնաշղթաները, որոնցից ամենաբարձրը Սվանեթիայինն է՝ Լայլա (4008 մ) գագաթով: Նշված լեռնաշղթաները կազմված են մեծ մասամբ յուրայի կրաքարերից, որտեղ մեծ զարգացում ունեն կարստային երևույթները:

Սուրամի լեռնաշղթայից մինչև Ալազան գետը Մ. Կ-ից անջատվում են Գուդիսի, Գուդամակարի, Քարթլիի և Կախեթի լեռնաշղթաները (վերջինիս շարունակությունն է Գոմբորիի շղթան): Ալազան գետից արլ. Մ. Կ-ի հվ. լանջը նշանակալից ճյուղավորություններ չի առաջացնում:

Մ. Կ. բնական սահման է բարեխառն և մերձարևադարձային գոտիների միջև, պատնեշ է օդային զանգվածների շարժման ճանապարհին, որի հետևանքով հս. և հվ. լանջերը կլիմայական տեսակետից միմյանցից տարբերվում են: Հվ. լանջին կլիման մերձարևադարձային է, հս. լանջին՝ բարեխառն: Արմ-ից արլ. կլիման ավելի ցամաքային է դառնում (շոգ ամառներով և ցուրտ ձմեռներով): Մ. Կ-ի ստորոտներին արմ-ում հուլիսի միջին ջերմաստիճանը 23—24°C է, արլ-ում՝ 25—27°C, հունվարին համապատասխանաբար՝ 0°C— —2°C և —2°C, —5°C: Ըստ բարձրության ջերմաստիճանը նվազում է. միջին բարձրության լեռներում, հուլիսին՝ արմ-ում 15—17°C է, արլ-ում՝ 17—20°C, հունվարին համապատասխանաբար՝ —3°C— —5°C և —8°C —12°C: Բարձր լեռներում արմ-ի և արլ-ի միջև ջերմաստիճանային տարբերությունները փոքրանում են՝ հուլիսին՝ 6—10°C, հունվարին՝ —12°C —14°C:

Տեղումները արմ-ից արլ. նվազում են: Ամենից առատ տեղումներ լինում են հվ. լանջի արմ-ում՝ 2000—2500 *մմ*, Սվանեթիայի լեռներում՝ 3000—3500 *մմ*: Հս. լանջերին տեղումները 1000—1600 *մմ* են, որոնք դեպի արլ. նվազում են, Դաղստանի ներքին շրջաններում թափվում է 300—500 *մմ*, Մ. Կ-ի ծայր արլ. մասում՝ մինչև 250 *մմ*: Ձմռանը ամենուրեք տեղում է ձյուն, սակայն կայուն ձնածածկույթ ստեղծվում է 1000 *մ*-ից բարձր լեռներում. այն ամենից մեծ հզորության է հասնում հվ. լանջի արմ. բարձրլեռնային գոտում՝ 3—4 *մ*, սակայն դեպի արլ. նվազում է և Լեռնային Դաղստանում հասնում 20—25 *սմ*-ի:



Մեծ Կովկասի Ջրբաժան շղթա. Թերեքի ակունքները

Մ. Կ-ի բարձր գոտում գոյություն ունի սառցապատում: Հավերժական ձյան գծի ներքին սահմանը արմ-ում հասնում է 2700 *մ*, արլ-ում՝ 4100 *մ*-ի: Ժամանակակից սառցապատման տարածքը 1430 *կմ*² է, (70%-ը՝ հս. լանջին): Խոշոր սառցադաշտերից են Դիխսուն, Բեզենգին, Կարաուգոմը, Լեկզիրը:

Գետային ցանցը զարգացած է, գետերը հոսում են խոր կիրճերով, սնվում հալոցքային, անձրևային, ստորերկրյա և սառցադաշտային ջրերով, հորդացումը երկարատև է: Խոշոր գետերն են Կուբանը, Լաբան, Բելայան, Թերեքը, Մալկան, Սուլակը, Բզիբը, Կոդորը, Ինգուրը, Ռիոնը, Արագվին, Ալազանը: Մ. Կ-ի հվ. լանջի արլ. մասում շատ են սելավները (Դուրուջի, Ախտի, Գեոկչայ ևն): Մ. Կ-ում մեծ լճեր չկան, եղածներն էլ ունեն սառցադաշտային կամ կարստային ծագում (Ռիցա, Ցերիկ գյոլ): Մ. Կ. հարուստ է հիդրոէներգիայի պաշարներով, որոնց մի մասն օգտագործվում է:

Հողաբուսական ծածկույթը և կենդանական աշխարհը բազմազան է, լավ արտահայտված ուղղաձիգ գոտիականությամբ. արմ-ում գերակշռում են խոնավ մերձարևադարձային և խառն անտառները, մերձալպյան և ալպյան մարգագետինները, արլ-ում՝ կիսաանապատները, չոր տափաստանները, տեղ-տեղ՝ լայնատերև անտառները կամ նոսր անտառները, մերձալպյան և ալպյան մարգագետինները:

Մ. Կ-ի արմ. մասը մեծ մասամբ անտառածածկ է, հվ. լանջինը՝ Կոլխիդայի տիպի: Արմ-ից արլ. գոտիները ցամաքայնության պատճառով բարձրանում են: Բուսական և կենդանական աշխարհը մարդու ազդեցությամբ զգալի աղքատացել է, այժմ բնության պահպանության նպատակով ստեղծվել են պետական արգելոցներ (Կովկասյան, Թեբերդայի, Հյուսիս-Օսեթական, Ռիցայի, Զաքաթալայի ևն):

*Գրկ.* Գաբրիելյան Հ. Կ., Կովկասի ֆիզիկական աշխարհագրություն, Ե., 1979: Мильков Ф. Н., Гвоздецкий Н. А., Физическая география СССР, 4 изд., испр. и доп., М., 1976; Նույնի, Физическая география Кавказа, в. 1—2, М., 1954—58.

**ՄԵԾ ԿՈՒԵՆՔ**, Մեծկվենք, Մեծկուանք, գավառ Մեծ Հայքի Արցախ նահանգում: Տեղադրվում է Թարթառ գետի վերին ավազանում, Մռավ լեռան լանջերից դեպի հվ. և արլ.: XII դ. մտել է *Ծարի* իշխանության մեջ: Մ. Կ. եպիսկոպոսության կենտրոն Խաթրավանքը XII դ. վերջից դարձել է նաև Ծարի իշխանության հոգևոր կենտրոն:

**ՄԵԾ ՀԱՄԱԿԱՐԳ**, ընդհանուր ֆունկցիոնալ նպատակով միավորված, միմյանց հետ կապված կառավարվող ենթահամակարգերի համախումբ: Մ. հ-ի բնութագրական հատկանիշներն են. առանձնացվող մասերի (կառավարվող ենթահամակարգերի) առկայությունը, համակարգում մարդկանց, մեքենաների և բնական միջավայրի մասնակցությունը, ենթահամակարգերի միջև նյութական, էներգետիկական և ինֆորմացիոն կապերի, ինչպես նաև դիտարկվող Մ. հ-ի և այլ համակարգերի միջև կապի առկայությունը (տես *«Մարդ-մեքենա» համակարգ*, *Արտադրության ավտոմատացում*): Մ. հ-երի օրինակ են. էներգահամակարգը, որի մեջ մտնում են էներգիայի բնական աղբյուրները (գետերը, արևի և քամու էներգիան), էլեկտրակայանները, ենթակայանները, էլեկտրահաղորդման գծերը և սպասարկող անձնակազմը, արտադրական ձեռնարկությունը, առևտրի ցանցը, կենդանի օրգանիզմը ևն: Մ. հ-ի գաղափարը մտցվել է ոչ թե ըստ մեծության համակարգերը դասակարգելու, այլ դրանցում տեղի ունեցող բոլոր երևույթների բազմազանությունը հաշվի առնելու նպատակով: Մ. հ-երի տեսությունը զարգանում է լեզվի (տերմինների և հասկացությունների ձևակերպում), մոդելի (իրական բարդ համակարգի փոխարինում ավելի պարզ համակարգով), տրոհման (սկզբնական համակարգի մասնատում), միավորման (մի քանի ցուցանիշների փոխարինում մեկով) և ստրատեգիայի (համակարգի և միջավայրի վիճակի գնահատման եղանակի ընտրություն և կառավարման ծրագրի մշակում) պրոբլեմների մշակման ուղղությամբ: Թվարկված հիմնարար խնդիրների հետ մեկտեղ Մ. հ-ի ստեղծման և օգտագործման համար անհրաժեշտ է լուծել մի շարք կիրառական (ֆունկցիոնալ, օպերացիոն) խնդիրներ:

Մ. հ-ի կառավարումը, որպես կանոն, իրականացվում է ստորակարգության սկզբունքով, երբ բարձրագույն օրգանը կառավարում է ցածր աստիճանի մի քանի ենթահամակարգեր, որոնցից յուրաքանչյուրին ենթարկվում են ավելի ցածր աստիճանի ստորաբաժանումներ: Մ. հ-երը ինտենսիվորեն զարգանում են սպասարկման և վարչական կառավարման ոլորտներում, ժողտնտեսության և պաշտպանության շատ բնագավառներում, որտեղ պահանջվում է հաշվի առնել մեծ թվով գործոններ և վերամշակել մեծ ծավալի ինֆորմացիա:

*Գրկ.* Эшби У. Р., Введение в кибернетику, пер. с англ., М., 1959; Гуд Г. Х., Макол Р. Э., Системотехника. Введение в проектирование больших систем, пер. с англ., М., 1962; Бусленко Н. П., Математическое моделирование производственных процессов на цифровых вычислительных машинах, М., 1964.

**ՄԵԾ ՀԱՅՔ** (հուն. Ἀρμενία Μεγάλη, լատ. Armenia Major, Armenia Magna, պահլ. Buzurg Armenān, վրաց. աղբյուրներում՝ Դիդի Սոմխեթի, հին ռուս. Арменъа Великая), Հայաստանի հիմնական տարածքի և նրանում ձևավորված հին հայկական թագավորության անվա-

նումը, ի տարբերություն Հայաստանի արմ. (անդրեփրատյան) փոքր տարածքի ու թագավորության՝ *Փոքր Հայքի*: Մ. Հ-ի հելլենիստական թագավորությունը հիմնադրել է *Արտաշես Ա* թագավորը (մ. թ. ա. 189—160): Մ. Հ-ի տերիտորիալ ամբողջականությունն իր ավարտին է հասել *Տիգրան Բ* Մեծի ժամանակ (մ. թ. ա. 95—55), երբ միավորվել են *Բարձր Հայք* և *Ծոփք* նահանգները: Մ. Հ-ի թագավորության տերիտորիալ ստատուսը միջազգային ճանաչում է գտել մ. թ. ա. 66-ին՝ Հայոց արքայից արքա Տիգրան Բ Մեծի և հռոմ. զորավար Պոմպեոսի միջև Արտաշատում կնքված պայմանագրով, ըստ որի, Մ. Հ. ընդգրկում էր 316 հզ. *կմ*$^2$ տարածություն: Այնուհետև, Հռոմ. կայսրությունից և Պարթևաստանի թագավորությունից հետո Մ. Հ-ի թագավորությունը համարվում էր երրորդ մեծ պետությունը Մերձավոր Արևելքում:

Արտաշեսյան հարստության անկումից հետո առաջացած քաղ. անկայուն վիճակի հետևանքով մ. թ. 37-ին Մեծ Հայքից անջատվեցին՝ հվ-ում՝ Հայկ. Միջագետքը (տես *Միջագետք Հայոց*)՝ Մծբին քաղաքով (27 հզ. *կմ*$^2$ տարածությամբ), որն անցավ Պարթևաստանին, հս-ում՝ Գողերձական երկիրը (4 100 *կմ*$^2$ տարածությամբ), որը միացվեց Վրաց (Իբերիայի) թագավորությանը: Այնուհետև պարթև Արշակունիները ձգտում են Մ. Հ-ի թափուր գահին հաստատել իրենց դինաստիայի ներկայացուցչին, իսկ Հռոմը՝ իբերացի իր դրածոներին: Մ. թ. 52-ին Պարթևաց Վաղարշ Ա թագավորը (51—75) Հայոց թագավոր հռչակեց իր եղբորը՝ *Տրդատ Ա* Արշակունուն, որի նստավայրն էր Մծբին քաղաքը, որտեղից նա պիտի խորանար Հայաստան և նվաճեր բուն երկիրը՝ Արտաշատում գահակալելու համար: Ըստ երևույթին, այս ժամանակաշրջանում պարթև. արքունիքը Հայոց թագավորին շնորհեց Ատրպատճաց գավառը (Կապուտան լճի արլ. ափերին)՝ իբրև «Ձեռական իշխանութեանն տունն թագաւորին Հայոց»: Վաղարշ Ա-ի այդ վճռական քայլի պատճառով պատերազմ ծագեց երկու մրցակից տերությունների միջև (54—63): Հայ ավագանու և ժող. զանգվածների աջակցությամբ ռազմ. գործողություններն ավարտվեցին հռոմեացիների պարտությամբ: Հռանդեայի պայմանագրով (64) երկու տերությունները վերստին ճանաչեցին Մ. Հ-ի տերիտորիալ ստատուսը՝ առանց Հայոց Միջագետքի և Գողերձական երկրի: Մ. Հ-ի թագավոր ճանաչվեց Տրդատ Ա: Այնուհետև Մ. Հ-ի արքունի գահը համարվում էր Արշակունի դինաստիայի «երկրորդ գահ»: Ըստ Հռանդեայի համաձայնագրի, Մ. Հ-ի թագավորական գահի թեկնածուին առաջադրում էր պարթև արքունիքը, իսկ հռոմ. կայսրը պիտի հավանություն տար և հաստատեր: Ընդունված կարգի խախտումը առաջ է բերել նոր պատերազմներ (114, 163—166):

Մ. թ. 72-ին Փոքր Հայքը, որը Հռոմը մտցրել էր Կապադովկիայի կազմում, առանձնացվում և տրվում է Մ. Հ-ի թագավորին՝ իբրև «Տուն ձեռական իշխանութեան թագաւորին Հայոց»: Նույն սկզբունքով Մ. Հ-ին է կցվում նաև Գիմաթենե գավառը: Այդ վիճակը պահպանվեց մինչև 385-ը: Մ. Հ-ի թագավորության տարածքն ավելի է ընդլայնվում Տրդատ Ա-ի որդու և հաջորդի՝ *Սանատրուկի* ժամանակ (88—109): Վերջինս 91-ին գրավում է Եդեսիայի (Օսրոենեի) Աբգար Զ թագավորի (71—91) գահը, հռչակվում «Մեծ թագաւոր Հայոց Մեծաց և Եդեսիոյ», հիմնադրում է Մծուրն քաղաքը և դարձնում իր գահանիստը, թեև հիմնական մայրաքաղաքը մնում էր Արտաշատը:

Հայ Արշակունիների հարստությունը դարձավ ժառանգական՝ սկսած Վաղարշ Բ-ից (186—198), երբ պարթև Արշակունիների ներքին գահակալական կռիվները խիստ թուլացրել էին նրանց: 224-ին Որմիզդականի վճռական ճակատամարտում Սասանյանները տապալեցին պարթև Արշակունիներին: Սկսվեց Սասանյանների պայքարը հայ Արշակունիների դեմ, որոնց դիտում էին իբրև պարթև գահի հնարավոր ժառանգներ: Նոր պայմաններում հայ Արշակունիները սերտ կապեր են հաստատում Հռոմի և Քուշանների թագավորության (Միջին Ասիայում և Հնդկաստանի արմ. մասում) հետ: Վաղարշ Բ-ից սկսած հայ Արշակունիները իրենց համարում էին Արշակունի երեք արքայատների (Քուշանական, Մազքթաց և Հայկական) մեջ առաջինը: Վաղարշ Բ-ի գահակալության տարիներին Մ. Հ-ի թագավորությունը վերստին հզորանում է, զինակցում Հռոմին՝ ընդդեմ Սասանյանների ոտնձգությունների:

*Խոսրով Ա* Մ ե ծ ը հաջողությամբ պայքարում էր Սասանյանների օրըստօրե աճող հզորության դեմ, պահպանում երկրի անկախությունն ու ամբողջականությունը: Սակայն Միջագետքում հռոմ. զորքի պարտությունից (244) հետո, երբ կնքվեց «ամենաամոթաբեր» պայմանագիրը, Մ. Հ-ի թագավորությունը 252-ին բաժանվեց Սասանյանների և Հռոմ. կայսրության միջև: Խոսրով Ա Մ ե ծ ը 253-ին հարկադրված եղավ քաշվել Հայաստանի՝ Հռոմին անցած մասը, որտեղ իր արքունիքը հաստատեց Եկեղյաց գավառի Չրմես ավանում, իսկ պարսկ. մասում թագավորեց Սասանյանների դրածո և Խոսրով Ա Մեծի ազգական Արտավազդ Ե (253—261): Խոսրով Ա Մեծը դավադրաբար սպանվեց Սասանյանների արքունիքի ուղարկած ոմն Անակի ձեռքով: Սպանված հայոց թագավորի մանկահասակ որդի Տրդատը ապաստանեց Հռոմում և ապրեց ու դաստիարակվեց Լիկինիանոս կայսերական տոհմում: Պարսկ. զորքերը գրավեցին նաև Հայաստանի հռոմ. մասը, որը համարվում էր «դաստակերտ կայսրաց»: Վալերիանոս Լիկիանոս կայսրը (253—260) չկարողացավ խոչընդոտել Սասանյաններին. Միջագետքում՝ Խառանի մոտ տեղի ունեցած ճակատամարտում նա գերվեց (260), որից հետո Մ. Հ-ի հռոմ. մասը 256—283-ին մնաց ռազմակալված պարսկ. զորքերի կողմից: Սասանյանները գահազրկեցին նաև Արտավազդ Ե-ին: Այնուհետև, 32 տարի (261—293) Մ. Հ-ի թագավորությունը համարվում էր Սասանյան դինաստիայի թագաժառանգի սեփականությունը՝ «դաստակերտը». այս ժամանակաշրջանում Մ. Հ-ում գահակալեցին գահաժառանգներ Որմիզդ-Արտաշիրը (261—273), Որմիզդակը (274—276) և Ներսեհը (276—293):

Պալմիրայի թագավորության նվաճումից հետո Ավրելիանոս կայսրը (270—275) իր արքունիքում չափահաս դարձած Տրդատին 274-ին հռչակեց Մ. Հ-ի թագավոր: Սակայն միայն Դիոկղետիանոս կայսեր ժամանակ (284—306) Տրդատը կարողացավ գահակալել Հայաստանի հռոմ. մասում: Սասանյան արքայից արքայի գահաժառանգ և Մ. Հ-ի թագավոր Ներսեհը Տիզբոնում իր գահակալական իրավունքները պաշտպանելու համար մտերմական փոխհարաբերություններ էր հաստատե Դիոկղետիանոսի հետ և 287-ին ճանաչե Տրդատի գահակալությունը հռոմ. Հայաստանում: 293-ին Ներսեհը Տրդատին ճանաչեց նաև Մ. Հ-ի պարսկ. մասի թագավոր, որով վերստին ամբողջացավ Մ. Հ-ի թագավորությունը: Որոշ ժամանակ անց, երբ Ներսեհը ամրապնդեց իր դիրքերը Տիզբոնում և փորձեց վերագրավել Մ. Հ-ի պարսկ. մասը, Ոսխայի ճակատամարտում (Բասեն գավառում) 297-ին հայ-հռոմ. միացյալ ուժերը փայլուն հաղթանակ տարան, և Ներսեհը հարկադրված 298-ին Մծբինում կնքեց 40-ամյա խաղաղության պայմանագիր, որով պաշտոնապես ճանաչվեց Մ. Հ-ի թագավորության միասնական տերիտորիան և նրա թագավոր *Տրդատ* Գ Մեծը (274—330): Մ. Հ. վերստին ճանաչվեց այն տարածքով, որ հաստատվել էր Հռանդեայի դաշնագրով 63-ին: Բացի այդ, Մ. Հ-ի թագավորին կայսրը կրկին վերադարձրեց Փոքր Հայքն ու Գիմաթենե գավառը, իսկ արքայից արքա Ներսեհը վերադարձրեց Ատրպատճաց գավառը: Մծբինի պայմանագրից (298) հետո Մ. Հ-ի թագավորությունը ապրում է վերելքի շրջան: 301-ին քրիստոնեությունը ճանաչվեց Մ. Հ-ի պետ. կրոն:

*Խոսրով Բ* Կոտակի ժամանակ (330—338) դեռևս պահպանվում էր Մ. Հ-ի թագավորության քաղ. և իրավական վիճակը: Սակայն *Տիրանի* և *Արշակ Բ*-ի գահակալման տարիներին (338—368) երկիրը նորից դառնում է հռոմեա-պարսկ. մրցակցության ասպարեզ: Երկրի ավագանին՝ նախարարները, բաժանվել էին հռոմ. և իրան. կողմնորոշում ունեցող խմբերի: Հայ հոգևորականությունը բացահայտ անցել էր կայսրության կողմը: Հայ ավագանու սակավաթիվ խումբը, որ համախմբված էր թագավորի շուրջը, չեզոքությամբ և խուսանավելու քաղաքականությամբ ջանում էր համախմբել և պահպանել երկրի ուժերը: Սակայն հռոմեա-պարսկ. նոր պատերազմը, որն ավարտվեց Հռոմի և Իրանի միջև կնքած նոր պայմանագրով (տես «*Ամոթալի դաշնագիր*» *363*) Մ. Հ-ի թագավորության անկման սկիզբ դարձավ: Մ. Հ. կորցրեց հվ-ում՝ «Մարաց ամուր աշխարհը», որն անցավ Սասանյաններին, իսկ հս-ում՝ Գուգարաց բդեշխության ոստանը, որն անցավ Վրաց թագավորությանը: Սասանյան Շապուհ II արքան, ներխուժելով Մ. Հ-ի կենտրոնական և արմ. գավառները, կործանում է «արքունի քաղաքները», իսկ նրանց բնակչությանը գերեվարում Իրանի խորքերը: Արշակ Բ-ի, ապա *Փառանձեմ* թագուհու և

*Պապ* թագավորի հերոսական դիմադրության շնորհիվ առժամանակ կայունանում է երկրի վիճակը: Սակայն քաղաքների՝ առևտրի ու արհեստների կենտրոնների, ավերումը լուրջ հարված է հասցնում երկրի տնտ. և քաղ. ամբողջությանը: Ուժեղանում է Մ. Հ-ի ապակենտրոնացումը՝ հայկ. վաղ ֆեոդ. միասնական պետության տրոհումն առանձին և ինքնամփոփ տերիտորիաների՝ նախարարությունների, որով սկսվում է ֆեոդ. հարաբերությունների նախարարական ժամանակաշրջան: Հայ Արշակունիների կենտրոնացված պետությունը թուլացավ, Մ. Հ-ի պետության ծայրամասերը անջատվեցին: Ստեղծված իրապայմաններում 385-ին (այլ ուսումնասիրողների կարծիքով՝ 387-ին) տեղի ունեցավ Մ. Հ-ի թագավորության բաժանումը Սասանյան Իրանի և Հռոմ. կայսրության միջև, պաշտոնապես վերացավ հայկ. պետության «Մեծ Հայք» անունը: Հայաստանի հռոմ. (395-ից՝ բյուզ.) մասը, որը բաղկացած էր Բարձր Հայք և Ծոփք նահանգներից, բյուզ. փաստաթղթերում նախկինի պես սովորաբար կոչվում էր «Մեծ Հայք»: Հռոմ. մասում 387-ին Արշակ Գ-ի (385—387) մահով վերացավ հայ Արշակունիների իշխանությունը, և երկիրը կառավարվեց «կոմսների» միջոցով: Պարսկ. մասում Հայոց թագավորի իշխանությունը պահպանվեց մինչև 428: Մ. Հ-ի թագավորությունը ընկավ 574 տարի գոյատևելուց հետո: Այնուհետև հայ ժողովրդին չվիճակվեց ամբողջ Մ. Հ. ընդգրկող մի միասնական հայկ. պետություն ստեղծել: Հայ Բագրատունիները (862—1045) միայն մասամբ կարողացան վերականգնել Մ. Հ-ի տերիտորիան: Մ. Հ. այնուհետև գոյություն ուներ որպես հայ ժողովրդի բնօրրան, որտեղ հայ ազգաբնակչությունը շարունակում էր գոյատևել մինչև Մեծ եղեռնը (1915): *Ս. Երեմյան*

**ՄԵԾ ՀԱՅՔԸ ԸՍՏ VII ԴԱՐԻ «ԱՇԽԱՐՀԱՑՈՒՅՑ»-Ի:** Հայ խոշորագույն գիտնական *Անանիա Շիրակացու* (610—685) «*Աշխարհացույց*»-ում մանրամասն նկարագրված են Մեծ Հայքը, Վիրքը և Աղվանքը՝ իրենց վարչատարածքային բաժանումներով: Հեղինակը, ձեռքի տակ ունենալով տարբեր ժամանակաշրջանների «աշխարհագիրների» տվյալները՝ հատկապես հայ Արշակունիների թագավորության և մարզպանական ժամանակաշրջաններից, հնարավորություն է ունեցել տալ Մեծ Հայքի այդ ժամանակաշրջանի վարչատերիտորիալ բաժանման սպառիչ պատկերը, երբ այն քաղաքականապես ներկայացնում էր մի ամբողջություն (Մեծ Հայքի թագավորության սահմանները 363—385-ին): Տրվում են նաև սահմանների հետագա փոփոխությունները, որ տեղի են ունեցել Հայաստանի բաժանումով Սասանյան Իրանի և Բյուզ. կայսրության միջև: Հիմք ընդունելով Մեծ Հայքի տարածքային բաժանումը 15 աշխարհների (նահանգների) և դրանց ստորաբաժանումների (գավառների)՝ հնարավոր է դառնում կազմել Մեծ Հայքի վարչատարածքային բաժանման քարտեզն ըստ «Աշխարհացույց»-ի: Այժմյան քարտեզագրական հիմքի վրա հնարավորություն կա վերակազմելու Անանիա Շիրակացու կազմած՝ Մեծ Հայքի, Վիրքի և Աղվանքի քարտեզը, որը մեզ չի հասել:

Ըստ «Աշխարհացույց»-ի Մեծ Հայքն ունի հետևյալ նահանգներն ու գավառները.

1. Բ ա ր ձ ր Հ ա յ ք, ունի 9 գավառ՝ Դարանաղի, Աղյուն, Մնձուր, Եկեղյաց, Մանանաղի, Դերջան, Սպեր, Շաղագոմ, Կարին: 2. Ծ ո փ ք (Չորրորդ Հայք), ունի 8 գավառ՝ Խորձյան, Հաշտյանք, Պաղնատուն, Բալահովիտ, Ծոփք (Շահունյաց), Անձիտ, Դեգիք, Գավրեք (Գորեք): 3. Ա ղ ձ ն ի ք, ունի 11 գավառ՝ Անգեղտուն, Նփրկերտ, Աղձն, Քաղ, Կեթիկ, Տատիկ, Ազնվաց ձոր, Երխեթք, Գզեղխ, Սալնո ձոր, Սանասունք (Սասուն): 4. Տ ու ր ու բ ե ր ա ն (Տարոնո աշխարհ), ունի 16 գավառ՝ Խութ, Ասպակունյաց ձոր, Տարոն, Արշամունիք, Մարդաղի, Դասնավորք, Տվարածատափ, Դալառ, Հարք, Վարաժնունիք, Բզնունիք, Երևարք, Աղիովիտ, Ապահունիք, Կորի, Խորխոռունիք: 5. Մ ո կ ք, ունի 8 գավառ՝ Իշայր, Մյուս Իշայր, Իշոց, Առվենից ձոր, Միջա, Մոկք Առանձնակ (Արքայից), Արգաստովիտ, Ջերմաձոր: 6. Կ ո ր ճ ա յ ք, ունի 11 գավառ՝ Կորդուք, Կորդրիք Վերին, Կորդրիք Միջին, Կորդրիք Ներքին, Այտրունյանք, Այգառք, Մոթողանք, Որսիրանք, Կարթունիք, Ճահուկ, Փոքր Աղբակ: 7. Պ ա ր ս կ ա հ ա յ ք, ունի 9 գավառ՝ Այլի (Կուրիճան), Մարի, Թրաբի, Արասխ (Ովեա), Ըռնա (Առնա), Տամբեր, Զարեհավան, Զարավանդ, Հեր: 8. Վ ա ս պ ու ր ա կ ա ն, ունի 35 գավառ՝ Ռշտունիք, Տոսպ, Բոգունիք, Արճիշակովիտ, Կուղանովիտ, Աղիովիտ, Գառնի, Առբերանի, Բուժունիք, Առնո-ոտն, Անձևացիք, Տրրպատունիք, Երվանդունիք, Բուն Մարդաստան, Մարդաստան, Արտազ, Ակե, Աղբակ Մեծ, Անձախի ձոր, Թոռնավան, Ճվաշ-ռոտ, Կրճունիք, Մեծնունիք, Պալունիք, Գուկան, Աղանդ-ռոտ, Պարսպատունիք, Արտաշեսյան, Բաքրան (Մաքրան), Գաբիթյան, Գազրիկյան, Տայգրբյան, Վարաժնունիք, Գողթն, Նախճավան: 9. Ս յ ու ն ի ք, ունի 12 գավառ՝ Երնջակ, Ճահուկ, Վայոց ձոր, Գեղաքունի, Սոդք, Աղահեճք, Ծղուկ, Հաբանդ, Բաղք, Ձորք, Արևիք, Կովսական: 10. Ա ր ց ա խ, ունի 12 գավառ՝ Մյուս Հաբանդ, Վայկունիք (Ծար), Բերդաձոր, Մեծ Առանք, Մեծ Կվենք, Հարճլանք, Մուխանք, Պիանք, Պարսականք (Պարզվանք), Քուստի, Փառնես, Կողթ: 11. Փ ա յ տ ա կ ա ր ա ն, ունի 10 գավառ՝ Հրաքոտ-պերոժ, Վարդանակերտ, Ցոթնփորական բագինք, Բաղան-ռոտ, Առոս-պիժան, Հանի, Աբշիբազավան, Սպանդարան-պերոժ, Որմիզդ-պերոժ, Ալևան: 12. Ու տ ի ք, ունի 8 գավառ՝ Առան-ռոտ, Տռի, Ռոտ-Պարսեան, Աղվե, Տուս-Քստակ, Գարդման, Շակաշեն, Ուտի Առանձնակ: 13. Գ ու գ ա ր ք, ունի 9 գավառ՝ Ձորոփոր, Կողբոփոր, Ծոբոփոր, Տաշիր, Թռեղք, Կանգարք, Ջավախք Վերին, Արտահան, Կղարջք: 14. Տ ա յ ք, ունի 8 գավառ՝ Կող, Բերդաց փոր, Պարտիզաց փոր, Ճակք, Բողխա, Ոքաղե, Ազորդաց փոր, Առեաց փոր: 15. Ա յ ր ա ր ա տ, ունի 22 գավառ՝ Բասեն, Գաբեղյանք, Աբեղյանք, Հավնունիք, Արշարունիք, Բագրևանդ, Ծաղկոտն, Վանանդ, Շիրակ, Արագածոտն, Ճակատք, Մասյացոտն, Կոգովիտ, Աշոցք, Նիգ, Կոտայք, Մազազ, Վարաժնունիք, Ոստան Հայոց, Ուրծաձոր, Արած, Շարուր դաշտ:

Նշված աշխարհների բաժանման համակարգը ժամանակի ընթացքում խախտվել է, սակայն դրանց մեծ մասը շարունակում է կոչվել իր անունով՝ իբրև աշխարհագրական-տարածքային հասկացություն, իսկ գավառներն իրենց սահմաններով, որ սովորաբար համընկնում էին ֆիզիկաաշխարհագրական բաժանումներին, շարունակում էին մնալ նաև հետագայում: Այս բաժանումները հիմք հանդիսացան հետագայում՝ VIII դ. սկզբներին, Արաբական խալիֆայության կազմում գտնվող *Արմինիա* վարչական միավորը ստեղծելիս:

*Գրկ.* Ե ր ե մ յ ա ն Ս. Տ., Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, Ե., 1963: Հ յ ու բ շ մ ա ն Հ., Հին Հայոց տեղւոյ անունները, Վնն., 1908: А д о н ц Н., Армения в эпоху Юстиниана, СПБ, 1908. *Ս. Երեմյան*

Քարտեզը տես 321-րդ էջից առաջ՝ ներդիրում:

**ՄԵԾ ՀԱՐԹԱՎԱՅՐԵՐ** (Great Plains), նախալեռնային սարավանդ ԱՄՆ-ում և Կանադայում: Արմ-ից եզրավորվում է Հյուսիսային Ամերիկայի Կորդիլիերներով: Ձգվում է հվ-արլ-ից հս-արմ., հս. լայնության 29° և 62°-ների միջև: Երկարությունը 3600 *կմ* է, լայնությունը՝ 500—800 *կմ*: Հանդիսանում է Հյուսիս-Ամերիկյան պլատֆորմի ծայրամասը: Սարավանդի մինչքեմբրյան բյուրեղային հիմքը ծածկված է նստվածքային ապարներով: Մակերևույթն արլ-ից արմ. աստիճանաբար բարձրանում է 500—1700 *մ*: Շատ տեղերում երկրակեղևի վերին շերտերի ապարները լվացվել և տեղատարվել են գետերով՝ առաջացնելով 200—300 *կմ* երկարությամբ հովիտների խիտ ցանց և մինչև 300 *մ* բարձրության ելուստներ: Վերջինները Մ. հ. բաժանում են առանձին մասերի՝ Լյանո Էստակադո, *Բարձր հարթավայրեր*, Էդուարդի և Միսսուրիի սարավանդներ: Հվ-ում տիրապետում են կարստային ձևերով սեղանաձև բարձրությունները: Մ. հ. հարուստ են նավթի, քարածխի, բնական գազի, կերակրի աղի հանքավայրերով և հազվագյուտ հողերի տարրերով: Կլիման ցամաքային է, հս-ում՝ բարեխառն, հվ-ում՝ մերձարևադարձային: Գետերը սակավաջուր են, արագահոս, հոսում են խոր հովիտներով: Խոշոր գետերն են Միսսուրին, Պլաթը, Արկանզասը, Կոլորադոն, Փեքոսը: Հողերը առավելապես շագանակագույն են, հս-ում՝ սևահողային, գորշ անտառային, ծայր հվ-ում՝ դարչնագույն: Մ. հ-ի մեծ մասը ծածկված է չոր տափաստաններով, կանադական մասում գերակշռում է անտառատափաստանը: Կենդանական աշխարհին աղքատ է: Բնակչությունն զբաղվում է անասնապահությամբ, բուսաբուծությամբ (մշակում են բամբակ, կարտոֆիլ, շաքարի ճակնդեղ, կերաբույսեր) և անտառային տնտեսությամբ:

**ՄԵԾ ՂԱՐԱՔԻԼԻՍԱ**, *Կիրովական* քաղաքի նախկին (մինչև 1935-ը) անվանումը:

**ՄԵԾ ՃՈՒՌԱԿ** (Accipiter gentilis), ճուռակների ընտանիքի գիշատիչ թռչուն: Մարմնի երկարությունը 52—70 *սմ* է,

կենդանի զանգվածը՝ 0,55—1,8 *կգ*։ Էգերն արուներից խոշոր են։ Կարճ ու լայն թևերը և երկար պոչը նպաստում են ծառերի ու թփերի արանքում արագ և հմուտ թռչելուն։ Հասուն թռչունների մեջքը գորշավուն է, որովայնային կողմը՝ սպիտակավուն, գորշ լայնական շերտերով։ Էգերն արուներից մուգ են գունավորված։ Տարածված է Հյուսիսային Ամերիկայի, Եվրոպայի, Ասիայի (այդ թվում՝ նաև ՀՍՍՀ) անտառային շրջաններում և Մարոկկոյի լեռներում։ Բնադրում է ծառերի վրա, դնում 3—5 ձու։ Թխսում է գլխավորապես էգը։ Սնվում է թռչուններով, սկյուռներով, նապաստակներով ևն, երբեմն վնաս է հասցնում որսորդական տնտեսություններին։

**ՄԵԾ ՄԱԶՐԱ**, գյուղ Հայկական ՍՍՀ Վարդենիսի շրջանում, Մասրիկ գետի ափին, շրջկենտրոնից և Վարդենիսի երկաթուղային կայարանից 5 *կմ* հյուսիս-արևելք։ Մ. Մ-ով է անցնում Վարդենիս—Կրասնոսելսկ ավտոխճուղին։ Կոլտնտեսությունն զբաղվում է անասնապահությամբ, հացահատիկի, ծխախոտի, կերային կուլտուրաների մշակությամբ։ Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կապի բաժանմունք, ավտոմատ հեռախոսակայան, կինո, կենցաղսպասարկման կոմբինատ, մանկապարտեզ, ամբուլատորիա։ Գյուղը գազիֆիկացված է։ Որպես բնակավայր հայտնի է VII դարից։ Մ. Մ-ում գտնվում է IX դ. բարձրարվեստ խաչքար։



Մեծ Մազրա



Խաչքար (881, Մեծ Մազրա)

Դա մի մեծ, լայն քար է՝ գետնի և հավասար պատվանդանի վրա, ներքևում փոքր-ինչ նեղ, վերին մասը՝ կամարաձև, կենտրոնում՝ մեծ խաչ (հարթաքանդակ), վերին թևի ծայրից սկիզբ են առնում խաղողի երկու ողկույզ, իսկ ներքևի թևի երկու կողմերից բարձրանում են մեկական ուռեր։ Խաչքարի թիկունքին գրված է թվականը (881) և ընդարձակ արձանագրություն։ Քանդակային պլաստիկայի մեծ զգացողությամբ օժտված քարգործ վարպետի խաչքարը վեհ ու կոթողային նկարագիր ունի և համարվում է այդ շրջանի նշանավոր հուշարձաններից մեկը։ Մ. Մ-ում պահպանվել են եկեղեցի (XVII դ.), 2 մատուռ (XII—XIII դդ.), գերեզմանոցներ խաչքարերով (XV—XVII դդ.)։

*Գրկ*. Բարխուդարյան Մ., Միջնադարյան հայ ճարտարապետներ և քարգործ վարպետներ, Ե., 1963։

**ՄԵԾ ՄԱՆԹԱՇ**, գյուղ Հայկական ՍՍՀ Արթիկի շրջանում, Մանթաշ գետի ափին, շրջկենտրոնից 10 *կմ* հյուսիս-արևելք։



Մեծ Մանթաշ

Մ. Մ-ով է անցնում Ապարան—Արթիկ ավտոխճուղին։ Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև հացահատիկի, կերային կուլտուրաների մշակությամբ։ Ունի միջնակարգ դպրոց (1855), կուլտուրայի պալատ, կինո, մսուրմանկապարտեզ, ավտոմատ հեռախոսակայան, կապի բաժանմունք, կենցաղսպասարկման կոմբինատ, հիվանդանոց (15 մահճակալով)։ Կա արտադրական կոմբինատ։ Շրջակայքում պահպանվել են գյուղատեղի, գյուղում՝ եկեղեցիներ, գերեզմանոցներ, 2 մենաստան (միջնադար)։ Բնակիչների նախնիներն եկել են Բասենի Խորասան գյուղից, 1831-ին։

**ՄԵԾ ՄԵՆԴԵՐԵՍ**, հնում՝ Մեանդրոս, գետ Թուրքիայի արևմուտքում։ Երկարությունը 380 *կմ* է։ Սկիզբ է առնում Անատոլյան սարահարթից, թափվում Եգեյան ծով։ Ստորին հոսանքում առաջացնում է բազմաթիվ գալարներ։ Մ. Մ-ի հին անվանումը՝ Մեանդրոսը, դարձել է գետային գալար նշանակող հասարակ անուն։

**«ՄԵԾ ՄՀԵՐ»**, տես *«Սասնա ծռեր»*։

**ՄԵԾ ՄՈՂՈԼՆԵՐ**, Հնդկաստանի տիրակալների դինաստիա 1526—1858-ին։ Օգտվելով Հյուսիսային Հնդկաստանի քաղ. անկայուն վիճակից՝ Քաբուլի կառավարիչ *Բաբուրը* ներխուժել է Հյուսիսային Հնդկաստան և հիմնել Մ. մ-ի պետությունը։ Մողոլներ անվանումն առաջացել է Հյուսիսային Հնդկաստանի և Միջին Ասիայի մահմեդականներին հընդիկների տված մուղալ անունից։ Մ. մ. անվանել են XVII դ. եվրոպացի ճանապարհորդները։ XVII դ. Մ. մ-ի պետությունն իր մեջ ընդգրկել է ամբողջ Հնդկաստանը (բացի ծայր հվ-ից), այժմյան Աֆղանստանի տարածքի արլ. մասը, Փենջաբը։ Հզորության գագաթնակետին է հասել *Շահ Ջահանի* ժամանակ։ *Աուրենգզեբի* մահից (1707) հետո սկսվել է երկպառակտչական պայքար, պետությունը տրոհվել է։ Թուլացել է Մ. մ-ի ազդեցությունը ենթակա մարզերում։ XVIII դ. կեսին Մ. մ. փաստորեն տիրել են միայն Դելիին և նրա շրջակայքը։ XVIII դ. վերջին Մ. մ. դարձել են Հյուսիսային Հնդկաստանի խոշոր ֆեոդալների դրածոները։ 1803-ին անգլ. *Արևելա-հնդկական ընկերությունը* զավթել է Դելին։ Մ. մ. ձևականորեն համարվել են Հնդկաստանի կառավարիչներ մինչև 1858-ը, երբ անգլ. գաղութային իշխանությունները վերացրին դինաստիան։

Մ. մ-ի դինաստիայի ներկայացուցիչները.

Բաբուր (1526—30), Հումայուն (1530—39, 1555—56), Աքբար (1556—1605), Ջահանգիր (1605—27), Շահ Ջահան (1627—58), Աուրենգզեբ (1658—1707), Բահադուր շահ (1707—12), Ջահանդար շահ (1712—1713), Ֆառուխ Սիյար (1713—19), Մուհամմեդ շահ (1719—48), Ահմեդ շահ (1748—1754), Ալամգիր II (1754—59), Շահ Ալամ II (1759—1806), Աքբար II (1806—37), Բահադուր շահ II (1837—58)։

*Գրկ*. Ասիայի և Աֆրիկայի երկրների միջին դարերի պատմություն, Ե., 1973, էջ 496—517։

**ՄԵԾ ՄՈՐԱՎԱԿԱՆ ՏԵՐՈՒԹՅՈՒՆ**, Մեծ Մորավական իշխանություն, արևմտյան սլավոնների վաղ ֆեոդալական պետություն IX—X դդ.։ Կազմավորվել է Մորավա գետի հովտում և իր բարգավաճ շրջանում ընդգրկել Մորավիայի, Սլովակիայի, Չեխիայի, Լուժիցի, Պաննիայի տարածքները և որոշ սլավ. հողեր։ Մայրաքաղաքն էր Վելեգրադը։ Հնագիտական պեղումները վկայում են այդ տարածքում բարձր զարգացած հողագործության, արհեստների, Բյուզանդիայի և Կիևյան Ռուսիայի հետ առևտրի, ամրոցներում և ազնվականների նստավայրերում տնտ. և քաղ. աշխույժ կյանքի մասին։ Պատմականորեն հայտնի առաջին իշխան Մոյմիր I-ի օրոք (830—846) տարածվել է քրիստոնեությունը։ Տերությունն ավելի է ամրապնդվել Ռոստիսլավի օրոք (846—870), որը ակտիվորեն պայքարել է գերմ. ագրեսիայի դեմ, դաշինք կնքել Բյուզանդիայի հետ (862)։ Նրա խնդրանքով Բյուզանդիայից Մ. Մ. տ. են ժամանել (836) *Կիրիլը և Մեթոդիսն*, որոնք և հիմնել են գերմ. եպիսկոպոսությունից անկախ սլավ. եկեղեցին, որով ամրապնդվել է Մ. Մ. տ-յան քաղ. ինքնուրույնությունը։ Պետության տարածքն առավել մեծ չափերի է հասել Սվյատոպլուկի օրոք (870—894)։ IX դ. ուժեղացել են ուդելային իշխանները։ 895-ին Մ. Մ. տ-ից անջատվել է Չեխիան, 897-ին՝ Լուժիցը, 906-ին քոչվոր հունգարները գրավել են տերության տարածքի մեծ մասը՝ վերջ տալով նրա գոյությանը։

**ՄԵԾ ՇԵՆ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտակերտի շրջանում, շրջկենտրոնից 10 *կմ* արևմուտք։ Միավորված է № 3 սովետական տնտեսության հետ։ Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կինո, փոստ, բուժկայան։ Մ. Շ-ում և շրջակայքում պահպանվել են միջնադարյան 3 եկեղեցի, վիմագրություններ, խաչքարեր։

**ՄԵԾ ՇՈՒՆ** (լատ. Canis Major), համաստեղություն երկնքի հարավային կիսագնդում: Գտնվում է Միաեղջյուր, Նավախել, Աղավնի, Նապաստակ համաստեղությունների միջև: Ամենապայծառ աստղը՝ *Սիրիուսը*, —1, 4-րդ *աստղային մեծության* է: Երևում է փոքր ու միջին լայնություններից: Հս. կիսագնդից հատկապես լավ է երևում ձմռանը: Հայերն անվանել են նաև Գամփռ:

**ՄԵԾ ՉԻՆԳԻԼԻ ԼԵՌՆԱՆՑՔ** (Խաչգյադուկ կամ Չինգիլի, Որկովի), գտնվում է Հայկական պար լեռնաշղթայի արևելյան մասում, 2097 *մ* բարձրության վրա: Մ. Չ. լ-ով է անցնում Իգդիր—Բայազետ ճանապարհը:

**ՄԵԾ ՊԱՐՆԻ**, գյուղ Հայկական ՍՍՀ Սպիտակի շրջանում, շրջկենտրոնից 18 *կմ* հարավ-արևմուտք: Կոլտնտեսությունն զբաղվում է շաքարի ճակնդեղի, հացահատիկի, կերային կուլտուրաների մշակությամբ և անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, 2 գրադարան, կինո, կապի բաժանմունք, կենցաղսպասարկման տաղավար, հիվանդանոց (15 մահճակալով): Գյուղի մոտ պահպանվել է Ս. Սարգիս մատուռը (XII—XIII դդ.): 1829-ին Մ. Պ-ով անցել է Ա. Ս. Պուշկինը:



Մեծ Պարնի

**ՄԵԾ ՋՐԲԱԺԱՆ ԼԵՌՆԱՇՂԹԱ** (Great Dividing Range) (Արևելա-Ավստրալիական լեռներ), Ավստրալիայում: Ձգվում է Ավստրալիայի արլ. և հվ-արլ. ափով, Քեյփ Յորք թերակղզուց մինչև Բասի նեղուց, 4000 *կմ*: Երբեմն Մ. Ջ. լ. անունը տարածվում է միայն արմ. շղթայի վրա Քվինսլենդում: Խոշոր կամարաձև բարձրացում է, առաջացած նեոգեն-անթրոպոգենում: Հիմնականում կազմված է պալեոզոյան, սակավ՝ մեզոզոյան նստվածքներից: Երկրաբանական տեսակետից համապատասխանում է Տասմանյան պալեոզոյան ծալքավորման մարզին: Օգտակար հանածոներից կան նավթ և գազ, անագ, բազմամետաղներ, ոսկի, պղինձ, տիտանամագնետիտային և մոնացիտային ավազներ, քարածուխ են: Հվ. լայնության 28°-ից հս. բաղկացած է մոտ 1000 *մ* բարձրության զանգվածներից, սարահարթերից ու զոգավորություններից, դեպի հվ.՝ առանձին զանգվածներից մինչև 2230 *մ* բարձրությամբ (Կոսցյուշկո լեռ): Գտնվում է մերձհասարակածային և մերձարևադարձային գոտիներում: Մ. Ջ. լ-ի արլ. լանջերից սկիզբ են առնում կարճ, սահանքավոր, ջրառատ գետեր, արմ. լանջերից՝ Մուրեյը և Դառլինգը: Արլ. լանջերը ծածկված են խոնավ-տերևաթափ մշտականաչ անտառներով, արմ. լանջերը՝ անտառասավաննաներով, սավաննաներով ու քսերոֆիտային թփուտներով:

**ՄԵԾ ՍԱԼԱ**, հայաբնակ գյուղ ՌՍՖՍՀ Ռոստովի մարզի Մյասնիկյանի շրջանում, շրջկենտրոնից 10 *կմ* հյուսիս: Կոլտնտեսությունն զբաղվում է հացահատիկային կուլտուրաների, արևածաղկի, բանջարեղենի մշակությամբ, անասնապահությամբ, թռչնաբուծությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, հիվանդանոց, կապի բաժանմունք:

**ՄԵԾ ՍԱՄՍԱՐ**, հայաբնակ գյուղ Վրացական ՍՍՀ Ախալքալաքի շրջանում: Զբաղվում են հողագործությամբ և անասնապահությամբ: Գյուղում գործում է միջնակարգ դպրոց: Մ. Ս-ի հայերը գաղթել են 1830-ին, Արևմտյան Հայաստանի Էրզրումի նահանգից:

**ՄԵԾ ՍԱՐԻԱՐ**, գյուղ Հայկական ՍՍՀ Ախուրյանի շրջանում, շրջկենտրոնից 14 *կմ* հյուսիս-արևելք: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև հացահատիկի և կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կինո, մանկապարտեզ, կապի բաժանմունք, բուժկայան: Հիմնադրվել է 1700-ին:



Մեծ Սարիար

**ՄԵԾ ՍԵՊԱՍԱՐ**, գյուղ Հայկական ՍՍՀ Ղուկասյանի շրջանում, շրջկենտրոնից 8 *կմ* արևմուտք: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև հացահատիկի և կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կինո, կապի բաժանմունք, բուժկայան: Գյուղում պահպանվել են ամրոց-բնակատեղիի ավերակներ և գերեզմանոց: Հիմնադրել են Ալաշկերտի Շիշթափա գյուղից եկածները, 1823-ին:



Մեծ Սեպասար

**ՄԵԾ ՏԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, քաղաքական տերմին, որով նշվում են միջազգային հարաբերություններում առաջատար դեր խաղացող առավել հզոր պետությունները: Պատմական տարբեր դարաշրջաններում «Մ. տ.» են դիտվել տարբեր պետություններ: Վիեննայի կոնգրեսը (1815) մասնակցում էր հինգ Մ. տ.՝ Ռուսաստան, Պրուսիա, Ավստրիա, Անգլիա և Ֆրանսիա: 1871-ից Պրուսիայի տեղը զբաղեցրեց միավորված Գերմանիան: 1898-ի իսպանա-ամերիկյան պատերազմից հետո Մ. տ. ճանաչվեցին ԱՄՆ-ը, XIX դ. վերջից՝ Իտալիան, 1905-ի ռուս-ճապոնական պատերազմից հետո՝ Ճապոնիան: XIX դ. վերջին և XX դ. սկզբին Մ. տ. բացասական դեր են խաղացել հայ ժողովրդի պատմական ճակատագրում: Հետապնդելով իմպերիալիստական նպատակներ Մերձավոր և Միջին Արևելքում, Մ. տ. *Հայկական հարցը* օգտագործել են Թուրքիայի վրա ճնշում գործադրելու և նրանից կոնցեսիաներ ու զանազան արտոնություններ կորզելու համար: 1939—45-ի երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Մ. տ. են համարվում ՍՍՀՄ-ը, ԱՄՆ-ը, Մեծ Բրիտանիան, Ֆրանսիան և Չինաստանը (1976-ից՝ ՉԺՀ), որոնք ՄԱԿ-ի անվտանգության խորհրդի մշտական անդամներն են և պատասխանատվություն են կրում խաղաղության պահպանության համար:

**ՄԵԾԱԾԱՒ ԱՌԵՎՏՈՒՐ**, տես *Առևտուր*:

**ՄԵԾԱԾԱՒ ԳԻՆ**, տես *Գին*:

**ՄԵԾԱՀԱՍԱԿՆԵՐԻ ԴՊՐՈՑՆԵՐ**, հանրակրթական ուսումնական հաստատություններ՝ արտադրությունից չկտրված աշխատողների ուսուցման համար: Ռուսաստանում բացվել են XIX դ. մասնավոր անձանց նախաձեռնությամբ, որպես տարրական դպրոցներ: ՍՍՀՄ-ում տարածում են ստացել Ժողկոմխորհի 1919-ի դեկտ. 26-ի՝ անգրագիտության վերացման մասին դեկրետից հետո: ՀՍՍՀ-ում այդպիսի դեկրետ է ընդունվել 1921-ի սեպտեմբերին: Անգրագիտության վերացման կետերի՝ *լիկկայանների* հետ միասին կազմակերպվել են նաև Մ. դ.: 1936-ին ստեղծվել են ոչ լրիվ միջնակարգ և միջնակարգ հանրակրթական Մ. դ.: 1943-ից Մ. դ. դարձել են բանվորիս և գյուղերիս դպրոցներ, որոնք 1958-ից կոչվել են երեկոյան (հերթափոխային) միջնակարգ հանրակրթական դպրոցներ: 1979—80 ուս. տարում ՀՍՍՀ-ում կար 163 այդպիսի դպրոց: Տես նաև *Երեկոյան կրթություն*, *Կիրակնօրյա դպրոցներ*:

**ՄԵԾԱՄԱՍՆՈՒԹՅԱՆ ԿՈՄԻՏԵՆԵՐԻ ԲՅՈՒՐՈ (ՄԿԲ)**, տեղական կազմակերպությունները ղեկավարելու, ՌՍԴԲԿ III համագումարը նախապատրաստելու և հրավիրելու համար Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ 1904-ի վերջին ստեղծված համառուսաստանյան բոլշևիկյան կուսակցական կենտրոն: ՄԿԲ-ի անհրաժեշտությունը պայմանավորված էր մենշևիկների պառակտիչ գործունեությամբ, որոնք ՌՍԴԲԿ II համագումարից հետո, կուսակցության ղեկավար մարմիններում, զավթել էին մեծամասնություն: Ներկուսակցական պայքարի սրման պայմաններում բոլշևիկների գլխավոր խնդիրն էր *ՌՍԴԲԿ երրորդ համագումարի* հրավիրումը: Մենշևիկները դեմ էին՝ վախենալով կորցնել իրենց դիրքերը: Համագումարի հրավիրման գործում կարևոր դեր խաղաց Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ 1904-ին Ժնևում հրավիրված 22 բոլշևիկների խորհրդ-

դակցությունը, որի ընդունած «Կուսակցությանը» դիմումը համագումարի հրավիրման կոչ էր անում: Համագումարի նախապատրաստման կոնկրետ աշխատանքներ իրականացնելու համար որոշվեց Ռուսաստանում ստեղծել բոլշևիկյան կենտրոն՝ Մեծամասնության կոմիտեների բյուրո: Երեք մարզային կոնֆերանսներում՝ Հարավային, Հյուսիսային և Կովկասյան (1904-ի նոյեմբերի վերջին ՌՍԴԲԿ կովկասյան միութենական կոմիտեների ներկայացուցիչների՝ Թիֆլիսում կայացած կոնֆերանսը հատուկ որոշում ընդունեց կուսակցության III համագումար հրավիրելու մասին, ստեղծեց հատուկ բյուրո, որը պետք է գործեր բոլշևիկյան մյուս կոմիտեների հետ սերտ համագործակցությամբ) ստեղծվեց այդպիսի կենտրոն: ՄԿԲ-ի կազմում ընտրվեցին Ա. Ա. Բոգդանովը, Ս. Ի. Գուսևը, Ռ. Ս. Զեմլյաչկան, Մ. Մ. Լիտվինովը, Մ. Ն. Լյադովը, Պ. Պ. Ռումյանցևը և ուրիշներ: ՄԿԲ-ի հետ միասին հիմնվեց մեծամասնության օրգան *«Վպերյոդ»* թերթը: ՄԿԲ և «Վպերյոդ» թերթը ղեկավարում էր Վ. Ի. Լենինը: ՄԿԲ-ի և մենշևիկյան կենտրոնների միջև պայքար ծավալվեց ս-դ. կոմիտեների համար: 1905-ի մարտին ՌՍԴԲԿ 28 կոմիտեներից 21-ը արտահայտվեցին հօգուտ համագումարի: Այս պայմաններում ՌՍԴԲԿ մենշևիկյան ԿԿ ստիպված փոխեց իր դիրքորոշումը և սկսեց բանակցություններ վարել ՄԿԲ-ի հետ: Մարտի 12 (25)-ին ՄԿԲ-ի և ԿԿ-ի միջև համաձայնություն կնքվեց համագումարի հրավիրման մասին և ստեղծվեց կազմակերպական կոմիտե, բայց մենշևիկները չմասնակցեցին համագումարի հրավիրման նախապատրաստմանն ու նրա աշխատանքներին: Մեծ էր ՄԿԲ-ի դերը ՌՍԴԲԿ III համագումարի հրավիրման գործում:

*Գրկ.* Լ ե ն ի ն Վ. Ի., Ծանուցում մեծամասնության կոմիտեների բյուրո կազմելու մասին, Երկ., հ. 7: Ն ո ւ յ ն ի, Ծանուցում կազմակերպական կոմիտե կազմելու և Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի III հերթական համագումար հրավիրելու մասին, նույն տեղում: Ն ո ւ յ ն ի, Հարավային կոմիտեների կոնֆերենցիայի մասնակիցներին և Հարավային բյուրոյին, Երկ., հ. 34: Л я д о в М. Н., Из жизни партии 1903—1907 гг. (Воспоминания), М., 1956; О л ь м и н с к и й М. С., Борьба за партию после II съезда РСДРП, Сб. ст. 1904—1905 гг., М., 1933.

**ՄԵԾԱՄՈՐ** (Մեծ մոր) գետ, որ ակիզբ է առնում նույնանուն լճակից (այժմ՝ Ակնալիճ): Մեծամոր կամ Մեծ մոր է կոչվել Արաքսի ձախ ափին ճահիճների, շամբերի, լճակների ու գետերի ստորին հոսանքների համակարգը, որից և իր անունն է ստացել գետը-մորաջուրը-ճահճաջուրը:

**ՄԵԾԱՄՈՐ**, հնագույն ամրոց-բնակատեղի Արարատյան դաշտում, *Մեծամոր* գետի ակունքներին մոտ, Հայկական ՍՍՀ Էջմիածնի շրջանի Տարոնիկ գյուղից ոչ հեռու, Երևանից մոտ 30 *կմ* արևմուտք: 1965-ից Մ-ում պարբերաբար պեղումներ է կատարում ՀՍՍՀ ԳԱ կոմպլեքսային արշավախումբը: Բուն անունը հայտնի չէ, ուստի հնավայրը գետի անունով կոչվել է Մ.:

Հնագույն բնակատեղին գտնվում է միջին անթրոպոգենի շրջանի հրաբխային կոներից մեկի վրա և շրջակա հարթավայրում, ունի 30 *հա* տարածք: Գրեթե բոլոր կողմերից շրջապատված է ջրերով, հս-արմ-ից եզերվում է Մեծամոր գետով, իսկ արլ-ից պաշտպանվել է արհեստական խրամատ-ջրապատնեշով: Հնագիտական պեղումներով ապացուցվում է, որ Մ. մ. թ. ա. IV հազարամյակի կեսերից մինչև ուշ միջնադար անընդմեջ բնակեցված է եղել: Պեղված մշակութային շերտերը վերաբերում են բրոնզի դարաշրջանի (վաղ, միջին և ուշ) փուլերին, վաղ և զարգացած երկաթի ժամանակաշրջանին (նախաուրարտական, ուրարտական և անտիկ), միջնադարին: Մ. Արարատյան դաշտի վաղ բրոնզի դարաշրջանի (մ. թ. ա. III հազարամյակ) մշակույթի կենտրոններից մեկն է: Մեծ բլուրի վրայի ամրոցը պաշտպանված է եղել աշտարակավոր կիկլոպյան պարսպով, որից դուրս, լայնադիր դարավանդներում կառուցված են եղել կացարաններն ու տնտ. շինությունները: Հայտնաբերված նյութերն ապացուցում են, որ Մ-ում զարգացած են եղել երկրագործությունը, անասնապահությունը և արհեստները: Պաշտամունքային նշանակությանը զուգընթաց Մ-ի փոքր բլրաշարքն ունեցել է նաև աստղագիտական նշանակություն, և, ինչպես ուսումնասիրություններն են հավաստում, մ. թ. ա. 2800—2600-ին այնտեղ դիտվել է Սիրիուսի ծագելը (որի երևան գալը հավանաբար կապել են նոր տարվա սկզբի հետ և երկրպագել): Մ-ում բաց երկնքի տակ կատարվող ծիսական արարողություններին ծառայող զիկկուրատ-աստղադիտարանի և Մոխրաբլուրի մոնումենտալ աշտարակի ուսումնասիրությունների հիման վրա հավանական է համարվում այդ տաճարների շուրջը գյուղական համայնքների համախմբման ու քաղաքների առաջացման հնարավորությունը, այսինքն՝ մ. թ. ա. 3-րդ հազարամյակում Հայկական լեռնաշխարհում «քաղաքային հեղափոխության» առկայությունը, որի հետևանքով խարխլվեցին նախնադարյան հասարակարգի հիմքերը:

Հնագիտական ուշագրավ նյութերով են հագեցված մ. թ. ա. II հազարամյակի մշակութային շերտերը, որոնք հիմնավորում են այն ծագումնաբանական կապը, որ գոյություն ունի բրոնզի դարաշրջանի զարգացման փուլերի միջև:

Վաղ երկաթի դարաշրջանում (մ. թ. ա. XI—IX դդ.) Մ. քաղաք էր: Այն իր միջնաբերդով և դեպի համանուն լճակը տարածվող հարթավայրում կառուցված քաղաքով զբաղեցրել է մոտ 80 *հա* մակերես: Հզոր կիկլոպյան պարիսպներով պաշտպանված ամրոցում հիմնականում կենտրոնացվել են իշխանավորների և քրմական դասի բնակելի շինությունները, տաճարական համալիրն ու գլխավոր արտադրական միավորները (ձուլարաններ, արհեստանոցներ, մետաղի հարստացման կառույցներ): Նախաուրարտ. քաղաքը բաղկացած է եղել միջին և ստորին խավերի բնակելի թաղամասերից: Քաղաքն ունեցել է առանձին սրբատեղի, որի մի հատվածը պահպանվել է «Կարմիր քարեր» կոչվող տեղամասում:

Պեղածո նյութերից երևում է, որ քաղաքի բնակչությունը զբաղվել է արհեստներով, առևտրով, երկրագործությամբ, այգեգործությամբ, բանջարաբոստանային




Մ ե ծ ա մ ո ր ի ց հ ա յ տ ն ա բ ե ր վ ա ծ ի ր ե ր. *1*. քարե կուռք (մ. թ. ա. I հազարամյակ), *2*. ծիսական կավանոթ (մ. թ. ա. մոտ VIII—XII դդ.), *3*. բրոնզե ապարանջան (մ. թ. ա. XII դ.), *4*. բրոնզե շքասեղներ (մ. թ. ա. XIII դ.), *5*. բրոնզե բուրվառ (մ. թ. ա. XII դ.), *6*. բրոնզե զանգակ (մ. թ. ա. XII դ.), *7*. բրոնզե փականք (XII դ.), *8*. զարդարուն կարաս (մ. թ. ա. XIII դ.)

մշակույթով: Գոյություն է ունեցել ձուլման գործի հետ կապված խոշոր արտադրություն, որի մասին վկայում են աղյուսակերտ և գլանաձև ձուլարանները, դրանց մոտ հայտնաբերված թափոնների կույտերն ու ձուլման կաղապարները: Մ-ում խոշոր չափերով զարգացած անասնապահությունը նպաստել է գույքային շերտավորման խորացմանը: Այդ են վկայում միջնաբերդից շուրջ 0,5 *կմ* արլ. և հս-արմ. տարածվող դամբարանադաշտում (որն



Սրբարան Մեծամորում (մ. թ. ա. I հազարամյակ)

զբաղեցնում է մոտ 50 *հա* մակերես) պեղված առաջնորդների, ավագանու այլ ներկայացուցիչների քարակերտ հսկայածավալ դամբարաններն՝ օղակված առյուծի և ձիու բարձրաքանդակներով զարդարված սալերով: Դամբարանի կենտրոնում փայտե պատգարակի վրա թաղվել է առաջնորդը՝ ոսկուց, արծաթից, բրոնզից, անագից պատրաստված զանազան իրերի, սարդիոնից, ագատից, սաթից, ապակուց և մածուկից պատրաստված ձևավոր ուլունքների, բազմագույն ջնարակով պատած կավամանների, որսի տեսարաններով զարդաքանդակված խեցեղենի, քարե սկահակների հետ, որոնք խոսում վկաներն են տեխնոլոգիական նորույթներով հագեցված տարատեսակ արհեստների, հատկապես ակնագործության ու մետաղամշակման զարգացման բարձր մակարդակի: Առաջնորդի հետ թաղվել են նաև ծառաներ, ստրուկներ, նժույգներ, խոշոր և մանր եղջերավոր կենդանիներ (հավանաբար՝ որսաշներ):

Սակայն, հայտնաբերվածների շարքում ամենանշանավորը օնիքսից պատրաստված գորտի քանդակն է, որը սեպագիր արձանագրությունով բաբելական կշռաքար է: Այն թվագրվում է մ. թ. ա. XVI դ., ՍՍՀՄ տարածքում գտնված գրավոր հուշարձաններից ամենահինն է և, անշուշտ, վկայում է հեռավոր անցյալում աշխույժ առևտրական ու մշակութային կապերի առկայությունը:

Մեծամորն Արարատյան դաշտի վաղ երկաթի դարաշրջանի կարևորագույն կենտրոններից, «արքունի» քաղաքներից մեկն էր և իր արժեքավոր ավանդն է ներդրել այդ տարածքի մշակույթի զարգացման գործում:

Մ. հրդեհվել և կործանվել է մ. թ. ա. VIII դ. 80-ական թթ.՝ Արարատյան դաշտը նվաճելիս: Սակայն կարճ ժամանակ անց՝ կյանքն այստեղ վերահաստատվել է: Նվաճողները, կիկլոպյան աշտարակավոր նոր պարսպով ամրացնելով միջնաբերդը՝ քաղաքը հարկատու են դարձրել Վանի թագավորությանը: Միջնաբերդի տարածքի մեծ մասում ստեղծվել են հնոցներ և նրանց ծառայող օժանդակ կառույցներ:

Ուրարտ. պարսպից դուրս, նրան կից կառուցված քարաշեն շինությունների հետքերից երևում է, որ կյանքը Մ-ում շարունակվել է նաև մ. թ. ա. VI դ.: Միջնաբերդի տարածքում հայտնաբերվել են անտիկ և հելլենիստական ժամանակաշրջանների սակավաթիվ նյութեր: Միջին դարերում Մ. ամրոց էր՝ քարակերտ, բարձրադիր աշտարակով, որի ուրվագծերը պարզորոշ ընդգծված են բլրի մակերեսին: Մեծ բլրի հատկապես հս-արլ. լանջահարթակում հայտնաբերվել են միջնադարյան շինություններ և նյութական մշակույթի այլ մնացորդներ:

*Գրկ.* Խանզադյան Է. Վ., Մկրտչյան Կ. Հ., Պարսամյան Է. Ս., Մեծամոր, Ե., 1973:

*Է. Խանզադյան*

Պատկերազարդումը տես 369-րդ էջից առաջ՝ ներդիրում, աղյուսակ VIII:

**ՄԵԾԱՄՈՐ** (մինչև 1946-ը՝ Ղամարլու), գյուղ Հայկական ՍՍՀ Էջմիածնի շրջանում, Մեծամոր գետի ձախ ափին, շրջկենտրոնից 8 *կմ* հարավ: Կոլտնտեսու-



Մեծամոր

թյունն զբաղվում է այգեգործությամբ, պտղաբուծությամբ, բանջարաբուծությամբ, անասնապահությամբ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, կինո, բուժկայան:

**ՄԵԾԱՄՈՐ**, քաղաքատիպ ավան (1972) Հայկական ՍՍՀ Հոկտեմբերյանի շրջանում, շրջկենտրոնից 8 *կմ* հյուսիս-արևելք: Հիմնադրվել է 1969-ին, որպես *Հայկական ատոմակայանի* բնակելի ավան: Գլխ. հատակագիծը և բնակելի հասարակական շենքերը նախագծվել են 1968-ին (ճարտ. Մ. Միքայելյան, համահեղինակներ՝ Գ. Հովսեփյան, Կ. Տիրատուրյան): Ունի



Մեծամոր քաղաքատիպ ավան

միջնակարգ և երաժշտական դպրոցներ, մարզադպրոց, 2 կուլտուրայի տուն, գրադարան, կապի բաժանմունք, ավտոմատ հեռախոսակայան, կինոսարք, կենցաղսպասարկման տաղավար, 3 մսուր-մանկապարտեզ, հիվանդանոց (120 մահճակալով), պոլիկլինիկա, ամբուլատորիա, սանէպիդկայան: Մ. ունի ջրմուղ-կոյուղու ցանց և օգտվում է բնական գազից: Մ-ի տարածքում է Հայկական ատոմակայանը: Քտա հիմնադրվել է 1972-ին:

**ՄԵԾԱՊԵՏԱԿԱՆ ՇՈՎԻՆԻԶՄ**, *շովինիզմի*, *նացիոնալիզմի* տարատեսակ, գաղափարախոսությունն ու քաղաքականությունը պետության մեջ գերիշխող ազգի շահագործող դասակարգերի, որոնք իրենց ազգը համարում են մյուսներից «բարձր»: Մ. շ. առաջացել է բուրժ. ազգերի, ազգային ու բազմազգ պետությունների և գաղութային կայսրությունների կազմավորման ժամանակաշրջանում: Մ. շ., և առհասարակ շովինիզմը, հռահրում է թշնամանք ու ատելություն մյուս ժողովուրդների նկատմամբ, խտրականություն՝ տնտ., քաղ. ու մշակութային բնագավառներում, զրկում նրանց ինքնուրույնությունից: Օրինակ, նախկին Ավստրո-Հունգարական, Ռուսական կայսրություններում, սուլթանական Թուրքիայում իշխող դասակարգերը Մ. շ-ի քաղաքականություն էին իրականացնում ենթակա բազմաթիվ ժողովուրդների նկատմամբ: Ռուս. ցարիզմը երկիրը դարձրել էր «ժողովուրդների բանտ»: Մ. շ-ի գաղափարախոսությունն ու քաղաքականությունը սաստկացան իմպերիալիզմի դարաշրջանում: Երկրորդ համաշխարհային պատերազմի (1939—1945) ժամանակ Մ. շ-ի կատաղի կրողը հանդիսացավ գերմ. ֆաշիզմը, որը գերմ. ազգը հռչակեց «բարձր» ռասա՝ իբր կոչված գերիշխելու մյուս բոլոր ժողովուրդներին: Ետպատերազմյան շրջանում մի շարք երկրներում (ՀԱՀ, ԱՄՆ, Իսրայել և այլն) իրականացվում է Մ. շ., որը դրսևորվում է ռասայական խտրականության ձևով: Մ. շ. ընկած է մաոիզմի և Չինաստանի ներկա ղեկավարության ներքին ու արտաքին քաղաքականության հիմքում: Մարքս-լենինյան կուսակցությունները Մ. շ-ին, ինչպես և բուրժ. նացիոնալիզմի մյուս ձևերին հակադրում են հետևողական *պրոլետարական ինտերնացիոնալիզմը*: Սոցիալիստական հեղափոխությունը վերացնում է Մ. շ-ի, նացիոնալիզմի սոցիալական պատճառները, ստեղծում է ժողովուրդների բարեկամության ու եղբայրության, փոխադարձ հարգանքի մթնոլորտ: ՍՍՀՄ սահմանադրությամբ (36 հոդված) Մ. շ-ի ուղղակի կամ անուղղակի ամեն մի դրսևորում պատժվում է օրենքով:

Մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո հանդես եկող կոմունիստական ու բանվորական կուսակցությունները սկզբունքային պայքար են մղում Մ. շ-ի դեմ՝ հանուն պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հայրենասիրության:

*Գրկ.* Լենին Վ. Ի., Բանվոր դասակարգը և ազգային հարցը, Երկ., հ. 19: Նույնի, Սոցիալ-շովինիզմի դեմ պայքարելու մասին, նույն տեղում, հ. 21: Նույնի, Սոցիալ-շովինիստական քաղաքականության քողարկումը ինտերնացիոնալիստական ֆրազներով, նույն տեղում:

**ՄԵԾԱՍԱՐ**, տես *Քորեյ*:

**ՄԵԾԱՎԱՆ** (մինչև 1978-ը՝ Շահնազար), գյուղ Հայկական ՍՍՀ Կալինինոյի շրջանում, շրջկենտրոնից 8 *կմ* հյուսիս-արևմուտք: Անասնապահական, կարտոֆիլաբուծական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև հացահատիկի, կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի 2 միջնակարգ, երեկոյան և 2 ութամյա դպրոցներ, կուլտուրայի տուն, 3 գրադարան, կինո, կապի բաժանմունք, հեռախոսակայան, կենցաղսպասարկման տաղավար, 3 մսուր-մանկապարտեզ, հիվանդանոց: Գործում են «Հայզոդգ» միավորման և Չարենցավանի գործիքաշինական գործարանի մասնաճյուղերը: Գյուղում և շրջակայքում պահպանվել են եկեղեցիներ (V—X դդ.), գյուղատեղիներ, ուխտատեղի



Մեծավան

(«Թևավոր խաչ»), գերեզմանոցներ (VII—XX դդ.), մատուռ:

**ՄԵԾԱՎԵՐՋ**, տես *Ցամք*:

**ՄԵԾԱՏՈՒՐՅԱՆ** Կարապետ Միհրանի [9(22).12.1909, Սուխում—31.8.1966, Երևան], հայ սովետական քանդակագործ: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1960): 1934-ին ավարտել է Երևանի գեղարվեստա-արդյունաբերական տեխնիկումը, 1941-ին՝ Թբիլիսիի Գեղարվեստի ակադեմիան: Ստեղծագործել է մոնումենտալ, դեկորատիվ և հաստոցային քանդակագործության բնագավառներում: Աշխատանքներից են՝ Ջերմուկի «Պարող աղջիկներ» շատրվանը (բրոնզ), Երևանի կենտրոնական շուկայի ճակատի զարդաքանդակները (բրոնզ), Ա. Ի. Միկոյանի



Կ. Մեծատուրյան. քանդակագործ Է. Աբրահամյանի դիմաքանդակը, մարմար (1952, Հայաստանի պետական պատկերասրահ, Երևան)

կիսանդրին, Է. Աբրահամյանի (քար, 1952), Մ. Սարյանի (բրոնզ, 1952), Ս. Առաքելյանի (բրոնզ, 1954) (երեքն էլ՝ Հայաստանի պետ. պատկերասրահ) դիմաքանդակները: 1930-ից մասնակցել է հանրապետական և միութենական ցուցահանդեսների: 1947-ից դասավանդել է Երևանի գեղարվեստա-թատերական ինստ-ում:

**ՄԵԾԱՐԵՆՑ** Միսաք Կարապետի [իսկական ազգանունը՝ Մեծատուրյան, հունվար, 1886, գ. Բինկյան (Արևմտյան Հայաստան, Ակն քաղաքին մերձ)—22.6 (5.7).1908, Կ. Պոլիս], հայ բանաստեղծ: Ծնվել է առևտրականի ընտանիքում, սովորել է հայրենի գյուղի Մեսրոպյան վարժարանում, ապա՝ Սվազի Արամյան դպրոցում (1894—96) և Մարզվանի «Անատոլիա» գիշերօթիկ կոլեջում (1896—1901): 1902-ին ընտանիքի հետ տեղափոխվել է Կ. Պոլիս, որտեղ մինչև 1905-ը սովորել է Ղալաթիայի Կեդրոնական վարժարանում: Ուսումն ընդհատել է սաստկացող հիվանդության պատճառով: Գրել սկսել է 1901-ից: 1903-ից տպագրվել է պարբերական մամուլում: Աշխատակցել է արևմտահայ շատ հրատարակությունների («Մասիս», «Հանրագիտակ», «Արևելյան մամուլ», «Լույս», «Սուրհանդակ», «Մանզումեի էֆքյար», «Բյուզանդիոն» ևն): Աշակերտական տարիների չափածո փորձերը հավաքել է «Բաբախումներ» ձեռագիր տետրում: Կենդանության օրոք, 1907-ին, Կ. Պոլսում լույս է տեսել Մ-ի բանաստեղծությունների երկու ժողովածու՝ «Ծիածան» և «Նոր տաղեր»: Մահացել է թոքախտից:

Մ-ի գրական ժառանգությունը բաղկացած է ավելի քան 130 քնարական ոտանավորից, շուրջ մեկ տասնյակ արձակ բանաստեղծությունից ու պատմվածքից և մի քանի գրական-քննադատական հոդվածներից («Ինքնադատության փորձ մը», «Նարեկացիին հետ» ևն), որոնցում շարադրել է իր ստեղծագործական սկզբունքները, պաշտպանվել թշնամական քննադատությունից: Կատարել է նաև չափածո և արձակ թարգմանություններ արևմտաեվրոպական և ռուս հեղինակներից:

Մ. Պեշիկթաշլյանից և Պ. Դուրյանից հետո Մ. նոր աստիճանի բարձրացրեց արևմտահայ պոեզիան, արտացոլեց դարասկզբի թուրքահայ կյանքի բարդ և հակասական պայմաններում ապրող ու տառապող առաջավոր անհատի հարուստ ներաշխարհը: Ընդդիմանալով սուլթանական ռեակցիային, ազգային և սոցիալական ճնշմանը՝ Մ. ստեղծեց մարդասիրական խոհերով, կյանքի ու բնության կարոտով տոգորված քնարական հերոսի կերպար, արտահայտեց դեմոկրատական խավերի երազանքը արդարության ու ներդաշնակ աշխարհի մասին: Մ. բնության լավագույն երգիչներից է հայ պոեզիայում: Բնության աստվածացումը նրան հանգեցրել է յուրօրինակ պանթեիստական ըմբռնումների («Ինչ արբեցությամբ...»): Մ-ի աշխարհայացքի ու ստեղծագործության բնորոշ կողմերից մեկը նրա մարդասիրությունն է, որն ունի որոշակիորեն արտահայտված դեմոկրատական բովանդակություն: Հակադրվելով անկումային գրականության «անմարդկային անձնաբանությանը», Մ. գտնում էր, որ բանաստեղծի կոչումը պետք է լինի սիրո, գթության և անձնազոհության քարոզը: Նրա քնարական հերոսը երազում է «անանձնական ուրախություն», որը նա պետք է պարզևի բոլոր կենդանի էակներին և, առաջին հերթին, «պարզ մարդերուն՝ գեղջուկներուն ու բանվորին» («Տո՛ւր ինձի, Տե՛ր...», «Ըլլայի, ըլլայի» բանաստեղծաշարը): Մ. իր մի շարք երկերում կերտել է արևմտահայ գյուղի կյանքի և աշխատանքի հովվերգական պատկերներ («Ջրտուք», «Որթին տերևը», «Տկճորին երգը»):

Մ-ի բանաստեղծական արվեստը շատ կողմերով կապված է դասական ռոմանտիզմի և *սիմվոլիզմի* հետ: Նա արևմտահայ պոեզիայում առաջ քաշեց բանաստեղծական պատկերի կառուցման նոր եղանակներ, ընդգծեց բառի փոխաբերական իմաստը, կատարելության հասցրեց ոտանավորի ձևերը: Սակայն, ընդհանուր առմամբ, Մ. հեռու է մնացել սիմվոլիզմի անհատապաշտական բովանդակությունից և



Մ. Մեծարենց

ուրբանիստական թեմատիկայից: Նրա ստեղծագործության վրա մեծ ազդեցություն են թողել հայ միջնադարյան պոեզիան (հատկապես Գրիգոր Նարեկացին) և ժող. բանահյուսությունը: Մ-ի ստեղծագործությունն իր հերթին ներգործել է արևմտահայ և արևելահայ պոեզիայի վրա, հատկապես բնության պատկերների յուրացման, մարդու և բնության փոխհարաբերության գեղարվեստական մեկնաբանության հարցում:

*Երկ.* «Ոսկի արիշին տակ» (արձակ երկերու հավաքածո), ԿՊ, 1934: Երկ. լիակտ. ժող., Ե., 1934: Երկ. լիակտ. ժող., Ե., 1981:

*Գրկ.* Ազատյան Թ., Միսաք Մեծարենց (կյանքը), ԿՊ, 1922: Ղանալանյան Հ., Միսաք Մեծարենց, Ե., 1958: Ջրբաշյան Է., Միսաք Մեծարենց, 2 վերամշկ. հրտ., Ե., 1977: *Է. Ջրբաշյան*

**ՄԵԾՆՈՒՆԻՔ**, գավառ Մեծ Հայքի Վասպուրական նահանգում, Մարմետ գետի միջին ավազանում: Միջին դարերում մտել է Վասպուրականի Արծրունյաց իշխանության (908-ից՝ թագավորության) կազմի մեջ: 902-ին Վասպուրականը Գագիկ և Գուրգեն Արծրունիների միջև բաժանելիս՝ Մ. մտել է առաջինի տիրույթների մեջ: Վասպուրականի թագավորության անկումից (1021) հետո՝ Մ. ենթարկվել է սելջուկ-թուրքական, մոնղոլ-թաթարական և թուրքմ. ցեղերի գերիշխանությանը: 1502-ից Մ. մտել է Սեֆյան Իրանի կազմի մեջ:

**ՄԵԾՈՓԱՎԱՆՔԻ ԴՊՐՈՑ**, գործել է XII դ. վերջերից, Մեծոփավանքում: XIII դ. սկզբներին դպրոցը ղեկավարել է «յոյժ իմաստուն և գիտնական» Թովման, իսկ դարավերջին՝ Գլաձորի համալսարանի առաջին սաներից մեկը՝ Մխիթար Սասնեցին (մինչև 1337-ը): Նրան գործակցել է իր ուսումնակից Հովհաննես Ոսպնակեր Արճիշեցին: Այստեղ սովորելու էին գալիս Վանա լճի շրջակա գյուղերից և հեռավոր վայրերից: Մ. դ-ում ստեղծվել են մատենագրական երկեր, ընդօրինակվել ձեռագրեր: Մխիթար Սասնեցու րաբունապետության ժամանակ Մ. դ., Գլաձորի համալսարանի ղեկավարությամբ, պայքարել է Հռոմի միարարների (ունիթոռների) դեմ, և այդ պայքարն այնուհետև դարձել է դպրոցի հիմնական նպատակներից մեկը: XIV դ. վերջերին դպրոցի վարդապետը եղել է Տաթևի համալսարանի սան, Հովհաննես Որոտնեցու աշակերտ *Հովհաննես Մեծոփեցին*, որը վերակառուցել է վանքը և օժանդակ շինություններ կառուցել: 1408-ին *Գրիգոր Տաթևացին* Մեծոփավանքում հիմնադրել է բարձր տիպի դպրոց (160 աշակերտով և 8 վարդապետով), որտեղ ավելի ուշ րաբունապետ են եղել *Գրիգոր Խլաթեցին* ու *Թովմա Մեծո*-

*փեցին*: Մ. դ. փաստորեն Խառաքաստա և Տաթևի բարձր տիպի դպրոցների շարունակությունն էր: Մ. դ-ում ծաղկել է հատկապես գրչության և մանրանկարչության արվեստը: Սաներից հայտնի են 22 ընտիր գրիչներ՝ *Հովհաննես Մանկասարենցը*, Հունանը, Հակոբը, Հովհաննես Բաղիշեցին, Պետրոսը, Թովման, Ղազարը, Մկրտիչը, Զաքարիան, Հակոբ Բերկրեցին, Կարապետ Վանեցին, Ստեփանոսը, Հայրապետը, Ներսեսը, Հովհաննես Արծկեցին, Կիրակոս Բանասերը և ուրիշներ, որոնցից մեզ է հասել շուրջ 200 ձեռագիր: Մանրանկարչության ներկայացուցիչն է դպրոցի սան *Մինաս* ծաղկողը, որին աշակերտել են նշանավոր ծաղկողներ Կարապետ Բերկրեցին, Կարապետ Աղթամարցին: Հայտնի է նաև Հայրապետ կազմողը: Մեծոփավանքում խմբագրվել, սրբագրվել, մեկնվել են բազմաթիվ երկեր, շարադրվել պատմություններ, տոմարագիտական, գրչության արվեստի, երաժշտության վերաբերյալ երկեր, նկարազարդվել, կազմվել, նորոգվել են բազմաթիվ գրքեր: Անապահով է եղել դպրոցի վիճակը. մի քանի անգամ տեղափոխվել է մերթ Բաղեշ, մերթ Մշո Առաքելոց վանք: Թովմա Մեծոփեցուն փոխարինել է իր դասընկեր Սարգիս վարդապետը: XVI դ. Մեծոփավանքը այրվել է: XVII դ. հիշվում է միայն Մ. դ-ի մատենադարանը, որը կողոպտվել է 1895-ին: Պահպանված 100 ձեռագրերը 1915-ին անցել են քրդերի ձեռքը:

*Ա. Մաթևոսյան*

**ՄԵԾՐԱՑ ԼԵՌՆԵՐ**, Սողանլուղ, լեռներ Հայկական լեռնաշխարհում: Ջրբաժան է Օլթի և Կարս գետերի միջև: Տեկտոնական-հրաբխային լեռնազանգված է մնացորդային լեռնազագաթներով: Առավելագույն բարձրությունը 3430 *մ* է (Կարչխալ լեռ): Կազմված է լիպարիտներից, դացիտներից, օբսիդիաններից, կոնգլոմերատներից, անդեզիտներից: Լանջերը զառիթափ են, անտառապատ: Գագաթամերձ գոտին ծածկված է ենթալպյան և ալպյան բուսականությամբ:

**ՄԵԾՔ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Խլաթի գավառում: 1909-ին ուներ 185 (20 ընտանիք) հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է բռնագաղթի ճանապարհին:

**ՄԵԿԵՆԱՍ** (Maecenas) Գայոս Կիլնիոս (մ. թ. ա. 74—64-ի միջև —մ. թ. 8), հռոմ. պետ. գործիչ, Օգոստոս կայսեր մերձավորը, միապետության համոզված կողմնակից: Հայտնի է իր ժամանակի գրական կյանքի վրա ունեցած ազդեցությամբ: Մտերիմ է եղել ժամանակի լավագույն բանաստեղծներ Հորացիոսի, Վերգիլիոսի, Պրոպերցիոսի և ուրիշների հետ, հովանավորել ու պաշտպանել է նրանց: Մ-ի սեփական գործերից (արձակ և չափածո) մեզ են հասել փոքրիկ հատվածներ: Մ-ի անունը, որպես գիտության ու արվեստի գործիչների հովանավորի, դարձել է հասարակ անուն:

**ՄԵԿՆԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, 1. (գիտության, իմացաբանության և մեթոդաբանության մեջ) որևէ տեսությանը կամ նրա առանձին տարրին վերագրվող նշանակությունների (իմաստների) ամբողջությունը: Մ. կարևոր է տեսության կառուցվածքը, նրա զարգացման ընթացքը ուսումնասիրելիս, օբյեկտիվ աշխարհի հետ նրա ունեցած կապը պարզաբանելիս: Բովանդակային տեսությունը, որպես օբյեկտիվ աշխարհի Մ., միշտ ունի այդ աշխարհի որևէ հատվածը, որը կոչվում է «բնական Մ.»: Օրինակ, երկրաչափությունը պատմականորեն ըմբռնվել է որպես գիտություն առարկաների ձևերի մասին, և այդ ձևերի ամբողջությունն էլ եղել է նրա Մ.: Սակայն արդի ըմբռնմամբ տեսությունն անմիջականորեն արտացոլում է ոչ թե բուն աշխարհը, այլ գիտակցության մեջ ձևավորվող աշխարհի պատկերը, ուստի տեսությունը (նրա տարրը) կարող է ունենալ բազմաթիվ Մ-ներ: Օրինակ, մաթեմատիկայում ածանցյալը կարող է մեկնաբանվել և՛ որպես արագություն տվյալ կետում, և՛ որպես կորի շոշափողի անկյունային գործակից (այս երկու Մ-ները միմյանց իզոմորֆ են և ճշգրիտ իմաստ են ստանում միայն ածանցյալի գաղափարի միջոցով):

Տեսությունների ձևայնացման և բազմապիսի ձևայնացված համակարգերի ըստեղծման շնորհիվ Մ-ները դադարում են զգայական-առարկայական լինելուց և աճում է հնարավոր Մ-ների թիվը, որոնք անմիջական կապ չունեն առարկայական աշխարհի հետ: Դա հատկապես ակնառու է արդի ձևայնացված տրամաբանական համակարգերի բնագավառում: Մ. տեսության հարաբերական *անհակասականության* ապացուցման հիմնական միջոցն է: Օրինակ, ոչ էվկլիդեսյան երկրաչափության Մ-ների միջոցով (Ա. Պուանկարե, Ֆ. Կլայն) նրա անհակասականությունը հանգեցվում է էվկլիդեսյան երկրաչափության (այնուհետև թվաբանության) անհակասականությանը (տես նաև *Աքսիոմատիկ մեթոդ*, *Իզոմորֆություն*, *Մոդել*): 2. Լայն առումով, Մ. նշանակում է ինչ-որ բանի իմաստի բացահայտումը, այս կամ այն տեքստի բացատրությունը: Կատարողական արվեստում՝ գեղարվեստական գործի յուրովի ըմբռնումն ու ներկայացումը, որը միարժեքորեն չի բխում հեղինակի մտահղացումից:

*Ս. Ավետիսյան*

**ՄԵԿՆԵՍ**, քաղաք Մարոկկոյում, Մեկնես նահանգի վարչական կենտրոնը: 248 հզ. բն. (1978): Կա երկաթուղային կայարան, օդանավակայան: Ավտոճանապարհների հանգույց է, գյուղատնտ. շրջանի կաբնոր կենտրոն: Կան սննդի, տեքստիլ, փայտամշակման ձեռնարկություններ, ցեմենտի գործարան, արվեստի թանգարաններ: Մ. ջնարակած խեցեղենի արտադրության կենտրոն է: Հիմնադրվել է XI դ.: Պահպանվել են հին քաղաքի պարսպապատերը Բաբ ալ Մանսուր դարպասով (XIII դ.), Մեծ մզկիթը (XIII դ. սկիզբ), Բու Ինանիյա մեդրեսեն (XIV դ.), Դար ալ Մակզեն պալատը (XVII դ. վերջ):

**ՄԵԿՆԻՉ**, աստվածաբանական, գիտական, գեղարվեստական գրականություն մեկնող, բացատրող, վերլուծող մատենագիր: Միջնադարում ամենից շատ մեկնում էին Աստվածաշնչի առանձին գրքեր: Հայ իրականության մեջ շատ տարածված էին Հովհաննես Ոսկեբերանի, Եփրեմ Ասորու մեկնությունները: Այլպես Դիոնիսիոս Թրակացու «Քերականական արվեստ»-ի Մ-ներ հայտնի են Դավիթ Քերականը, Մովսես Քերթողը, Գրիգոր Մագիստրոսը, տոմարի Մ-ներ՝ Անանիա Շիրակացին, Հովհաննես Կոզեռնը, Հակոբ Ղրիմեցին, Աստվածաշնչի առանձին գրքերի Մ-ներ՝ Եղիշեն, Ստեփանոս Սյունեցին, Գրիգոր Նարեկացին, Ներսես Շնորհալին, Մխիթար Գոշը, Վարդան Արևելցին և ուրիշներ:

*Ա. Մաթևոսյան*

**ՄԵԿՆՈՒԹՅՈՒՆ**, վերլուծական բացատրություն կամ մեկնաբանություն: Սկզբնավորվել է Հին Հունաստանում, երբ փիլիսոփաները մեկնել են կրոնական առասպելները և դրանց մեջ տեսել խորին մտքեր: Փիլոն Եբրայեցին և այլ հեղինակներ այլաբանորեն են բացատրել Հին կտակարանը, Սուրբ գրքի պարզ խոսքերը մեկնելիս որոնել ենթադրական գաղափարներ, կանխասություններ կամ գրքի բովանդակությունը համապատասխանեցրել ժամանակակից ըմբռնումներին ու հայացքներին: Այսպիսով ստեղծվել է Մ., և առաջացել մեկնողական գրականությունը: Սահակ Պարթևն ու Եզնիկ Կողբացին թարգմանել են Սուրբ գրքի շատ Մ-ներ: Մեկնել են նաև գիտական գրքեր, գեղարվեստական ստեղծագործություններ (Դիոնիսիոս Թրակացի՝ «Քերականական արվեստ», Արիստոտել՝ «Կատեգորիաներ», Գրիգոր Նարեկացի՝ «Մատյան ողբերգության» ևն): Հայ գիտնականները նույնպես գրել են Մ-ներ (Եղիշե՝ «Արարածոց մեկնություն», Ստեփանոս Սյունեցի՝ «Ավետարանի մեկնություն» ևն): VII—VIII դդ. հետո հաճախ որևէ երկ մեկնելիս քաղվածաբար օգտագործել են եկեղեցու ավելի հեղինակավոր ներկայացուցիչների Մ-ները (Վարդան Արևելցի, Գևորգ Սկևռացի ևն): Հայ գրականությունը հարուստ է թարգմանական և սեփական Մ-ներով, որոնց մեջ մտնում են նաև լուծմունքների և հարց ու պատասխանի ձևով գրված բացատրությունները:

*Գրկ.* Աբեղյան Մ., Հայ գրականության պատմություն, երկ., հ. 3, Ե., 1968:

*Ա. Մաթևոսյան*

**ՄԵԿՈՆԳ**, գետ Չինաստանում, Լաոսում, Կամպուչիայում և Վիետնամում (մասամբ Լաոսի սահմանն է Բիրմայի և Թաիլանդի հետ): Հնդկաչին թերակղզու ամենամեծ գետն է: Երկարությունը մոտ 4500 *կմ* է, ավազանը՝ 810 հզ. $կմ^2$: Սկիզբ է առնում Տանգլա լեռնաշղթայից (Տիբեթի բարձրավանդակ), թափվում Հարավ-Չինական ծով: Վերին հոսանքում կոչվում է Ձաչու, միջին հոսանքում՝ Լանցանցզյան: Խոշոր վտակներն են՝ Մունը, Տոնլեսապը, Թիենը, Սանը: Կամպուչիայի հարթավայրից դուրս գալուց հետո առաջացնում է Կոն ջրվեժը (բարձրությունը՝ 21 *մ*): Պնոմպեն քաղաքից ցած սկսվում է ճահճապատ, տեղ-տեղ մանգրովային բուսածածկույթով դելտա (մոտ 70 հզ. $կմ^2$), որը աղեղի ձևով մոտ 600 *կմ* ափի երկարությամբ մխրճվում է ծովի մեջ (տարեկան աճը՝ 80—100 *մ*): Սնումը անձրևային և ձնասառցադաշտային է: Հորդանում է ամռանն ու աշնանը: Վերին հոսանքում սառցակալում է: Տարեկան նվազագույն

ծախսը ստորին հոսանքում 14,8 հզ. *մ*$^{3}$*/վրկ* է, առավելագույնը 33 հզ. *մ*$^{3}$*/վրկ* (առանձին տարիների՝ մինչև 67 հզ. *մ*$^{3}$*/վրկ*): Հարուստ է ձկներով, նավարկելի է 700 *կմ*, վարարումների ժամանակ՝ մինչև 1600 *կմ*: Ափերին են Լուանգպրաբանգ, Վիենտյան, Պնոմպեն քաղաքները:

**ՄԵԿՈՒՍԱՐԱՆ**, իզոլյատոր (ֆրանս. isolateur, < isoler — առանձնացնել, մեկուսացնել) (բժշկական), վարակիչ հիվանդների կամ վարակի նկատմամբ կասկածելի և հատուկ վտանգավոր հիվանդությունների զոնայում եղած անձանց մեկուսացման համար նախատեսված հատուկ սարքավորված շինություն: Առավել կատարելագործված Մ. է բոքսը, որն ունի առանձին մուտք և ելք, օգտագործվում է լրիվ մեկուսացման համար: Մնացած դեպքերում մեկուսացնում են կիսաբոքսերում, շլյուզավորված և բոքսավորված հիվանդասենյակներում: Մ. ապահովվում է հատուկ գույքով, դեղամիջոցներով, ախտահանիչ նյութերով, անկողնային պարագաներով ևն: Մ. են հարմարեցնում նաև մանկամսուրներում, մանկապարտեզներում, պիոներական ճամբարներում, առողջարաններում, հանգստյան տներում: Մ. անհրաժեշտ է տեղավորել սննդամթերքների պահեստներից, խոհանոցներից, ջրամատակարարման աղբյուրներից, իսկ ռազմ. պայմաններում՝ վիրավորների տեղափոխման ճանապարհներից հեռու: Հիվանդ կենդանիների համար Մ. նախատեսվում է կառուցել անասնապահական շենքերից 200 *մ*-ից ոչ պակաս հեռավորության վրա: Մ-ի մուտքի մոտ փորվում է փոսորակ, որը նախատեսվում է վարակազերծող նյութերի համար:

**ՄԵԿՈՒՍԱՑԱԾ ԿԵՏ**, որևէ M բազմությանը պատկանող կետ, որի բավականաչափ փոքր շրջակայքում չկան այդ բազմության ուրիշ կետեր: Այս սահմանումը ենթադրում է, որ M-ում մտցված է նրա տարրերի միջև մոտիկության գաղափարը: Այդ առումով Մ. կ-ի գաղափարը տոպոլոգիական է (տես *Տոպոլոգիա*): Երկրաչափության մեջ դիտարկվում են կորի կամ մակերևույթի Մ. կ-երը: Կոմպլեքս փոփոխականի ֆունկցիաների տեսության գաղափարներից է անալիտիկ ֆունկցիայի մեկուսացած եզակի կետը:

**ՄԵԿՈՒՍԻՉ ԷԼԵԿՏՐԱԿԱՆ**, 1. մեծ տեսակարար էլեկտրական դիմադրություն ունեցող նյութ (տես *Մեկուսիչ էլեկտրատեխնիկական նյութեր*): 2. Էլեկտրասարքավորման՝ տարբեր էլեկտրական պոտենցիալներ ունեցող մասերը մեկուսացնելու և հողի, իրանի, կառույցի հետ կարճ միացումը կանխելու համար ծառայող էլեկտրատեխնիկական սարք: Տարբերում են գծային (հաղորդալարերը էլեկտրահաղորդման գծերի հենարաններին ամրացնելու համար), կայանային (բաշխիչ հարմարանքներում հոսանքատար մասերի մոնտաժման համար), ապարատային (էլեկտրական ապարատներում ու մեքենաներում դետալների ամրացման և բաժանման համար) մեկուսիչներ: 3. Մետաղական Մ. է., մեկ կողմից կարճ միացված երկլար կամ համառանցք գծի հատված, որը հավասար է աշխատանքային ռադիոալիքի երկարության 1/4-ին և գծի մյուս ծայրում ունի մեծ էլեկտրական դիմադրություն: Գերբարձր հաճախականության ռադիոկոնստրուկցիաներում կիրառվում է որպես հենարան, իսկ գծերում՝ որպես բացակ (խզում):

**ՄԵԿՈՒՍԻՉ ԷԼԵԿՏՐԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՆՅՈՒԹԵՐ**, կիրառվում են էլեկտրատեխնիկական և ռադիոտեխնիկական սարքավորումներում՝ տարբեր պոտենցիալ ունեցող հոսանքակիր մասերի առանձնացման, կոնդենսատորների ունակության մեծացման համար: Դրանք նաև ջերմահաղորդիչ միջավայր են էլեկտրական մեքենաներում, ապարատներում ևն: Իբրև Մ. է. ն. օգտագործում են *դիէլեկտրիկները*, որոնք հաղորդիչ նյութերի համեմատությամբ ունեն զգալիորեն ավելի մեծ տեսակարար ծավալային դիմադրություն ($10^{9}$—$10^{20}$ *օհմ·սմ*): Մ. է. ն-ի հիմնական բնութագրերն են տեսակարար ծավալային և մակերևութային դիմադրությունները, հարաբերական դիէլեկտրիկ թափանցելիությունը, դիէլեկտրիկ թափանցելիության ջերմաստիճանային գործակիցը, դիէլեկտրիկ կորուստների անկյունը, էլեկտրական ամրությունը (էլեկտրական դաշտի այն լարվածությունը, որի դեպքում տեղի է ունենում դիէլեկտրիկի ծակում): Մ. է. ն. դասակարգվում են ըստ ագրեգատային վիճակի, քիմ. բաղադրության, ստացման եղանակների ևն: Ագրեգատային վիճակից կախված՝ տարբերում են պինդ, հեղուկ և գազանման Մ. է. ն.: Պինդ Մ. է. ն. ամենաընդարձակ խումբն են կազմում և իրենց հերթին ստորաբաժանվում են մի շարք ենթախմբերի՝ շերտավոր պլաստիկներ, թղթեր և գործվածքներ, լաքագործվածքներ, փայլարներ, էլեկտրախեցեղեն նյութեր ևն: Այս խմբին են պատկանում նաև լաքերն ու այն հեղուկ բաղադրությունները, որոնք իբրև Մ. է. ն. օգտագործելուց առաջ պնդացվում են: Պինդ Մ. է. ն-ի էլեկտրական ամրությունը (20°C-ի և 50 *հց* հաճախականության դեպքում) տատանվում 1 *Մվ/մ*-ից մինչև 120 *Մվ/մ* սահմաններում: Հեղուկ Մ. է. ն. էլեկտրամեկուսիչ յուղերն են, այդ թվում նաև նավթային, բուսական և սինթետիկ յուղերը: Սրանք միմյանցից տարբերվում են մածուցիկությամբ և էլեկտրական բնութագրերով: Էլեկտրական լավագույն հատկություններով օժտված են կոնդենսատորային և մալուխային յուղերը: Հեղուկ Մ. է. ն-ի էլեկտրական ամրությունը 12—25 *Մվ/մ* է (տես նաև *Հեղուկ դիէլեկտրիկներ*): Գոյություն ունեն կիսահեղուկ Մ. է. ն.՝ վազելիններ: Գազանման Մ. է. ն. են օդը, էլեգազը (ծծմբի հեքսաֆտորիդ), ֆրեոն-21-ը (դիքլորֆտորմեթան): Օդը բնական մեկուսիչ է, ունի 3 *Մվ/մ* էլեկտրական ամրություն: Էլեգազի և ֆրեոն-21-ի էլեկտրական ամրությունը 7,5 *Մվ/մ* է. դրանք կիրառվում են հիմնականում մալուխներում և էլեկտրական զանազան ապարատներում: Ըստ քիմ. բաղադրության՝ տարբերում են օրգ. և անօրգանական Մ. է. ն.: Առավել տարածված են անօրգանական Մ. է. ն. (փայլար, խեցենյութեր ևն): Բացի այդ, Մ. է. ն. լինում են բնական և արհեստական: Արհեստական նյութերը, որոնք կարող են օժտված լինել էլեկտրական և ֆիզիկաքիմիական ցանկացած հատկություններով, լայնորեն կիրառվում են էլեկտրատեխնիկայում և ռադիոտեխնիկայում: Ըստ նյութի մոլեկուլների էլեկտրական հատկությունների՝ տարբերում են բևեռային (դիպոլային) և ոչ բևեռային (չեզոք) Մ. է. ն.: Բևեռային նյութերին են պատկանում բակելիտները, հալովաքսը, պոլիվինիլքլորիդը, սիլիցիումօրգանական նյութերի մեծ մասը: Ոչ բևեռային Մ. է. ն-ից են ջրածինը, բենզոլը, պոլիստիրոլը, պարաֆինը ևն:

Պինդ Մ. է. ն-ի համար մեծ նշանակություն ունեն մեխանիկական հատկությունները՝ ամրությունը, կարծրությունը, մշակելիությունը, ջերմային հատկությունները՝ ջերմակայունությունը, ջեռակայունությունը (բարձր ջերմաստիճանների ազդեցությանը դիմանալու հատկությունը), ինչպես նաև խոնավաանթափանցությունը, կայծակայունությունը ևն: Առավել ջեռակայուն են անօրգանական նյութերը (փայլար, ճենապակի, որոշ ապակիներ): Փխրուն նյութերի (ապակի, ճենապակի) համար կարևոր է նաև ջերմաստիճանի անկումներին դիմանալու հատկությունը: Մ. է. ն-ի կարևոր հատկություններից է նաև ջերմահաղորդականությունը: Հեղուկ Մ. է. ն-ում ջերմահաղորդականության գործակիցը մեծացնելու նպատակով ավելացնում են հանքային լցիչներ: Խոնավաանթափանցությունը բարձրացնելու համար ծակոտկեն Մ. է. ն. տոգորում են յուղերով, սինթետիկ հեղուկներով, կոմպաունդներով: Բացարձակ խոնավակայուն Մ. է. ն. կարելի է համարել ճենապակին, ապակին:

*Գրկ.* Электротехнический справочник, 5 изд., т. 1, М., 1974.

**ՄԵՀԵԿԱՆ**, հայկական հեթանոսական տոմարի 7-րդ ամսվա անունը: Կապվում է *Միհր* աստծո անվան հետ: Մ-ի 1-ը համապատասխանում է փետր. 7-ին:

**ՄԵՀԵՆԱԳԻՐ**, գրանշանների ենթադրվող համակարգ, որը, որոշ հայագետների կարծիքով (Ա. Գ. Աբրահամյան և ուրիշներ), գործածվել է հեթանոսական Հայաստանում՝ որպես հայ մեհենական գրականության գիր: Հայագետների մի զգալի մասը (Հ. Աճառյան, Է. Աղայան և այլք) չի ընդունում հայկ. ինքնուրույն գրատեսակի գոյությունը մինչմեսրոպյան շրջանում: Սակայն մեհենական գրականության առկայության փաստը, ինչպես և միջնադարյան մատենագրության մեջ հանդիպող *գաղափարագիր* նշանները ինչ-որ չափով հավանական են դարձնում Մ-ի գործածությունը նախաքրիստոնեական Հայաստանում: Բացառված չէ, որ այն եղած լինի քրմական դասի պաշտամունքային գաղափարագիրը՝ նաև հայերենով գրելու համար:

*Գրկ.* Աճառյան Հ., Հայոց գրերը, Ե., 1968: Աբրահամյան Ա. Գ., Հայոց գիր և գրչություն, Ե., 1973: Աղայան Է. Բ., Նախամաշտոցյան հայ գրի ու գրականության, մեսրոպյան այբուբենի և հարակից հարցերի մասին, Ե., 1977:

*Հ. Պետրոսյան*

**ՄԵՀԵՆԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆՆԵՐ**, հեթանոսական Հայաստանում գործող գրադարաններ, որոնք գտնվել են տաճարներում՝ մեհյաններում կամ կից շինություններում: Քրիստոնեությունից առաջ Հայաստանում

եղել են երկու տիպի գրադարաններ՝ թագավորական, որոնցում պահվել են արքունական դիվանի փաստաթղթերը, և տաճարային կամ մեհենական՝ կրոնական, պատմական և այլ կարգի գրականությամբ: Հայ մատենագիրների, հատկապես Մովսես Խորենացու, վկայություններից (գլխավորապես գրքերի ոչնչացման մասին) հետևում է, որ Հայաստանի Մ. գ. երբեմն մեծաքանակ գրականություն են ունեցել: Մ. գ-ի գրականության լեզվի մասին տեղեկություններ չկան. չի բացառվում, որ հուն., պահլավերեն, արամերեն գրքերի հետ նրանցում եղել են նաև մեհենական գրով հայերեն շարադրված նյութեր:

*Գրկ.* Մովսես Խորենացի, Պատմություն Հայոց, Ե., 1968: *Ռ. Իշխանյան*

**ՄԵՂԹԻՇԵՆ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Ասկերանի շրջանում, շրջկենտրոնից մոտ 10 *կմ* հարավ-արևմուտք: Միավորված է Բալլուջայի սովետական տնտեսության հետ: Ունի ութամյա դպրոց, գրադարան, կինո, ակումբ, կապի բաժանմունք: 1828-ից Մ-ում բնակություն են հաստատել Խոյից եկած նախկին ղարաբաղցի հայերը: Մ-ի շրջակայքում պահպանվել են երեք որմնափակ խաչքարերը (XII դ.), Բոշնին նահատակ, Ս. Հովհաննես (XIII—XIX դդ.) եկեղեցիները, «Մերա նահատակ», «Օծկան» վանքերը (XIII դ.):

**ՄԵՀՅԱՆ**, հեթանոսական *տաճար*: Ենթադրվում է, որ սկզբնապես Մ. են կոչվել *Միհր* աստծու տաճարները, հետագայում ստացել հեթանոսական տաճար ընդհանուր իմաստը: Մ-ում դրված էին լինում հեթանոսական որևէ աստվածության արձանը և զոհասեղան, որոնք կոչվել են *բագին*: Երբեմն Մ. նույնպես կոչվել է բագին: Ագաթանգեղոսը հեթանոսների մասին ասում է, որ նրանք դիցապաշտ կախարդությամբ Մ-ներ էին կառուցում և նրանց մեջ երկրպագության պատկերներ (արձաններ) կանգնեցնում: Մովսես Խորենացու վկայությամբ, Վաղարշակ թագավորը կարգելով հայոց նախարարությունները՝ «այս բոլորից հետո Արմավիրում մեհյան շինելով՝ արձաններ է կանգնեցնում արեգակին, լուսնին և իր նախնիներին» (Պատմություն Հայոց, 1968, էջ 140): Պատմահայրն այնուհետև հաղորդում է, որ Երվանդ Դ թագավորը մայրաքաղաքը Արմավիրից տեղափոխելով արևմուտք՝ Արաքսի ափը, որտեղ «ընդդեմ Ախուրեանն հոսի գետ», նոր մայրաքաղաքից ոչ հեռու, Ախուրյանի ափին շինել է *Բագարան* (աստվածների բնակավայր) փոքր քաղաքը, այնտեղ փոխադրել բոլոր կուռքերը Արմավիրից և Մ-ներ կառուցելով, իր եղբորը՝ Երվազին կարգել քրմապետ (նույն տեղում, էջ 166):

Հին Հայաստանում հեթանոսական դիցարանի բոլոր աստվածներին նվիրված Մ-ներ էին կառուցված: Երկնքի և երկրի արարիչ, բոլոր աստվածների հայր համարվող Արամազդի Մ. գտնվում էր Եփրատի ափի Անի ամրոցում: Առավել նշանավոր էր երկրի և նրա մայրաքաղաքի հովանավոր, կեցուցիչ ու բարերար «մեծի Անահտայ տիկնոջ» Մ., որը գտնվում էր Եկեղյաց գավառի Երիզա ավանում: Անահիտի մյուս Մ-ները կառուցված էին Արմավիրում, Բագարանում, Արտաշատում, Տարոնի Աշտիշատ ավանում և Աղձնիքի Դարբնաց քար կոչվող վայրում: Տիր աստծու Մ-ները գտնվում էին Արմավիրում, Բագարանում, նաև Արտաշատի մոտ՝ ճանապարհի վրա: Միհրի Մ. Դերջան գավառի Բագահառիճ ավանում էր, Վահագնի Մ.՝ Աշտիշատում, Նանե աստվածուհու Մ.՝ Թիլ ավանում, ասորական (սիրիական) ծագում ունեցող Բարշամինա աստծու Մ.՝ Թորդան ավանում, Աստղիկի Մ-ները՝ Աշտիշատում, Վանա լճի ափի Արտամատ քաղաքում, Գիսանե և Դեմետր աստվածների Մ-ները՝ Տարոնի Իննակյան կոչվող վայրում՝ Աշտիշատի մոտ: Գառնիի հեթանոսական տաճարը նվիրված է եղել հավանաբար Արեգ—Հելիոս—Միհր արևի աստծուն: Ագաթանգեղոսը, պատմելով քրիստոնեություն ընդունելուց հետո հեթանոսական Մ-ների ավերման մասին, բազմիցս նշում է, որ նրանք ընդարձակ տիրույթներ և գանձեր ունեին: Օրինակ՝ Արտաշատում Անահիտ դիցուհու և նրա մոտ գտնվող Տիր աստծու Մ-ները ավերելու առիթով ասում է, որ նրանց մթերյալ գանձերը գրավեցին, բաժանեցին աղքատներին, իսկ դաստակերտները (Մ-ներին պատկանող քաղաքատիպ ավանները), նրանց սպասավոր քրմերով, հողերով և սահմաններով նվիրվեցին եկեղեցուն: Համանման վկայություններ պատմիչը հաղորդում է նաև Բարշամինայի, Արամազդի, Անահիտի, Նանեի, Միհրի Մ-ների, ինչպես և Վահագնի, Աստղիկի և Անահիտի Աշտիշատում գտնվող Մ-ների կործանման առթիվ: Մ-ներում պահվում էին նաև մեհենական նշանագրերն ու գրականությունը, գեղարվեստական ձևավորմամբ մեծարժեք ծիսական սպասք, իրեր, առարկաներ՝ տարբեր նյութերից, նաև ազնիվ մետաղներից: Մ-ները կրոնա-պաշտամունքային, տնտ. և մշակութային կենտրոններ էին: Հայաստանում քրիստոնեական դավանանք ընդունելու ժամանակներում հեթանոսական աստվածությունների Մ-ները հիմնահատակ ավերվել են և նրանց ճարտ-յան մասին գրեթե ոչինչ հայտնի չէ: Պահպանվել է միայն Գառնիի արքայական ամրոցի հունա-հռոմեական տիպի հեթանոսական տաճար-մեհյանը, որին վերագրվել է հովանոցի աշխարհիկ նշանակություն:

*Գրկ.* Ագաթանգեղոս, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1909, էջ 33, 404—406, 408—410, 412, 422: Մովսես Խորենացի, Պատմություն Հայոց, Ե., 1968: Հովհան Մամիկոնյան, Պատմութիւն Տարօնոյ, Ե., 1941, էջ 79: Периханян А. Г., Храмовые объединения Малой Азии и Армении, М., 1959. *Բ. Առաքելյան*

**«ՄԵՀՅԱՆ»**, գրական-գեղարվեստական միամսյա հանդես: Լույս է տեսել 1914-ին (7 համար), Կ. Պոլսում: Տնօրեն-խմբագրապետ՝ Կ. *Զարյան*, խմբագիրներ՝ Գ. Բարսեղյան, Հ. Քյուֆեճյան (Օշական): Արևմտահայ իրականության մեջ 1910-ական թթ. ծագած, այսպես կոչված, հեթանոսական գրական շարժման (մեհենական հոսանք) ներկայացուցիչների հրատարակություն: Ձգտել է բարձրացնել գրականության դերը ժողովրդի բարոյական նկարագրի ձևավորման գործում, նպաստել հայ ժողովրդի տարանջատված հատվածների հզոր միասնությանը, մերժել է «ռուսահայ», «թրքահայ», «կովկասահայ» հասկացությունները գրական ասպարեզում: Անդրադարձել է Ռ. Զարդարյանի, Գ. Տեր-Կարապետյանի, Հ. Մնձուրու, Հ. Նազարյանի, Տ. Չրաքյանի (Ինտրա), Լ. Շանթի, Վրթ. Փափազյանի և ուրիշների ստեղծագործություններին: Քննադատական հոդվածներով բարձրացրել է գրական արժեքների վերագնահատման հարցը: Աշխատակցել են Դ. Վարուժանը, Վ. Թեքեյանը, Հ. Սիրունին, Լ. Էսաճանյանը, Ռ. Շիշմանյանը և ուրիշներ:

*Գ. Գույումջյան*

**ՄԵՀՐԱԲՅԱՆ** Անդրանիկ Համբարձումի (ծն. 25.6.1904, գ. Շուլավեր, այժմ՝ Շահումյան, Վրաց. ՍՍՀ), հայ սովետական հոգեբույժ: Բժշկ. գիտ. դ-ր (1941), պրոֆեսոր (1942), ՍՍՀՄ ԲԳԱ թղթակից անդամ (1961): ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1961): ՍՄԿԿ անդամ 1930-ից: 1929-ին



Ա. Հ. Մեհրաբյան

ավարտել է Դոնի Ռոստովի Հյուսիս-Կովկասյան համալսարանի բժշկ. ֆակուլտետը: 1933—41-ին եղել է տեղի բժշկ. ինստ-ի ասիստենտ, ապա՝ դոցենտ: Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին (1941—44): 1944-ից Երևանի բժշկ. ինստ-ի հոգեբուժության ամբիոնի վարիչն է. 1946—48-ին եղել է ինստ-ի դիրեկտորի տեղակալ գիտական գծով: Գիտական աշխատանքները նվիրված են վարակական (հատկապես մալարիային) պսիխոզների, շիզոֆրենիայի, էպիլեպսիայի, գլխուղեղի վնասվածքների, ալկոհոլամոլության, նարկոմանիաների կլինիկական ընթացքի, հոգեախտաբանության դասակարգման և բուժման հարցերին: Մ. լուսաբանել է գիտակցության և անձի (բնականոն և ախտաբանական վիճակներում), հոգեկան օտարացման, զգայախաբությունների, զառանցական մտքերի և ապանհատականացման խնդիրները: 1944-ից Մ. ՀՍՍՀ նյարդախտաբանների, հոգեբույժների և նյարդավիրաբույժների ընկերության նախագահն է:

*Երկ.* О природе индивидуального сознания, Е., 1959; Деперсонализация, Е., 1962; Общая психопатология, М., 1972; Личность и сознание, М., 1978.

**ՄԵՀՐԱԲՅԱՆ** Հմայակ Բեյբութի [2.7.1901, գ. Վերին Աղդան (այժմ՝ Գանձաքար, ՀՍՍՀ Իջևանի շրջանում)—2.7.1942, Սևաստոպոլ], սովետական բանակի գնդապետ (1940): ՍՄԿԿ անդամ 1922-ից: Մասնակցել է սովետական կարգերի հաստատմանը Հայաստանում: 1923-ին ավարտել է Հայկ. դիվիզիային կից ռազմաքա-


Հ. Բ. Մեհրաբյան

ղաքական դպրոցը: 1923—27-ին եղել է քաղղեկ նույն դիվիզիայի զորամասերում, Ա. Մյասնիկյանի անվ. ռազմ. դպրոցում: 1929-ին ավարտել է Անդրկովկասյան հետևակային դպրոցը, 1939-ին Ֆրունզեի անվ. ռազմ. ակադեմիան: Ծառայել է Պրիվոլժիեի, Սիբիրի ռազմ. օկրուգներում, մասնակցել Խալխին Գոլի կռիվներին (1939), սովետա-ֆինլանդական պատերազմին (1939—40): 1941—45-ի Հայրենական մեծ պատերազմի սկզբին եղել է Բելոռուսիայում (69-րդ հրաձգային կորպուսի շտաբի պետի տեղակալ), այնուհետև Մերձծովյան բանակի կազմում մասնակցել է Օդեսայի և Սևաստոպոլի պաշտպանությանը (1941—42), եղել Սևաստոպոլի պաշտպանության շրջանի բանակային մատակարարման պետ: Զոհվել է Սևաստոպոլի պաշտպանության ժամանակ: Պարգևատրվել է Կարմիր դրոշի, Հայրենական պատերազմի I աստիճանի (ետմահու) շքանշաններով: Մ-ի անունով է կոչվում Գանձաքարի միջնակարգ դպրոցը:

Գրկ. Ղ ա զ ա ր յ ա ն Ա. Վ., Պատերազմ, մարդիկ, ճակատագրեր, գիրք 1, Ե., 1979, էջ 510—525: Крылов Н. И., Огненный бастион, М., 1973, с. 319.

**ՄԵՂԱԴՐԱԿԱՆ ԵԶՐԱԿԱՑՈՒԹՅՈՒՆ**, դատավարական փաստաթուղթ, որը ավարտված *նախաքննության* (*հետաքննության*) հիման վրա ամփոփում է կատարված հանցագործության մասին տվյալներն ու անձին առաջադրված *մեղադրանքի* էությունը: Բաղկացած է նկարագրական և եզրափակիչ մասերից: Նկարագրական մասում շարադրվում է հանցագործության բովանդակությունը, տեղը, ժամանակը, միջոցներն ու շարժառիթները, հետևանքները, մասնակիցներից յուրաքանչյուրի դերը, տուժողի մասին տեղեկությունները, պատասխանատվությունը ծանրացնող կամ թեթևացնող հանգամանքները, ապացույցների վերլուծությունը: Եզրափակիչ մասում նշվում է, թե տվյալ հանցագործության համար պատիժ նախատեսող հոդվածով ում է առաջադրված մեղադրանք և ձևակերպվում է մեղադրանքը: Մ. ե-յանը կցվում են դատակոչի ենթակա անձանց ցուցակը, նախաքննության ժամկետի, խափանման միջոցի, իրեղեն ապացույցների, դատական ծախսերի մասին տեղեկանքները: Դատախազն իրավասու է Մ. ե. հաստատել և գործն ուղարկել դատարան, վերադարձնել լրացուցիչ քննության կամ կարճել: Դատախազը կարող է նաև Մ. ե. փոխել:

**ՄԵՂԱԴՐԱՆՔ**, 1. քրեական դատավարությունում իրավասու մարմինների կամ անձանց դատավարական գործունեությունը՝ ուղղված քրեական պատասխանատվության կանչված անձի մեղավորությունն ապացուցելուն: Սովետական օրենսդրությունը տարբերում է Մ-ի երեք տեսակ՝ պետ., հասարակական և մասնավոր: Պետ. Մ. պաշտպանում է դատախազը, հասարակական Մ.՝ աշխատավորների կազմակերպության լիազորված ներկայացուցիչը (*հասարակական մեղադրող*), մասնավոր Մ.՝ տուժողը կամ նրա ներկայացուցիչը (տես *Մասնավոր մեղադրանք*). Որոշակի դեպքերում մասնավոր Մ-ի գործերով, տուժողի կամ նրա ներկայացուցչի հետ զուգահեռ, որպես մեղադրող, կարող է հանդես գալ նաև դատախազը: 2. Անձին Մ. առաջադրելու մասին որոշմամբ ձևակերպված մեղադրական թեզիսի (*մեղադրական եզրակացություն*) բովանդակությունը:

**ՄԵՂԱԴՐՅԱԼ**, քրեական պատասխանատվության կանչված անձ, որի նկատմամբ *մեղադրանք* առաջադրելու որոշում է կայացվել: Տես նաև *Դատական պաշտպանություն*:

**ՄԵՂԱՅԱԿԱՆՈՎ ՆԵՐԿԱՅԱՆԱԼԸ**, դատարանին, դատախազությանը, նախաքննության կամ հետաքննության մարմնին իր կատարած հանցագործության մասին քաղաքացու կամավոր հայտարարությունը (գրավոր կամ բանավոր) մինչև որպես *կասկածյալ* ձերբակալվելը կամ որպես *մեղադրյալ* հարցաքննվելը: Հայտարարությունն ընդունող պաշտոնատար անձը ստուգում է ներկայացողի ինքնությունը, հայտարարության մասին կազմում է արձանագրություն, որը ստորագրում են ներկայացողն ու արձանագրություն կազմողը (ՀՍՍՀ քրեական դատավարության օրենսգիրք, հոդված 100): Մ. ն. կարող է դիտվել որպես մեղքը մեղմացնող հանգամանք, եթե հայտարարությունը հավաստի է և կատարված հանցագործության մասին պատմվել է լրիվ: Օրենքով նախատեսված դեպքերում Մ. ն. անձին քրեական պատասխանատվությունից ազատում է (օրինակ, կաշառք տալու մասին հայտնելը):

**ՄԵՂԵԴԻ** (< հուն. μελωδία — երգ, երգեցողություն), բարձր կազմակերպված մեներաձայնանի ինտոնացիոն-ռիթմական կառուցվածք, որ օժտված է կերպարային-արտահայտչական բովանդակությամբ և երաժշտության կարևորագույն սկզբնատարրն է: Ընդգրկում է երաժշտական լեզվի գրեթե բոլոր արտահայտչամիջոցները՝ *լադի* հիման վրա կազմակերպվող հնչյունային բարձրությունների և *մետրի* հիման վրա ընթացող հարաբերությունների հետ՝ նաև որոշակի ուժգնություն, տեմբր, կատարման կերպ, ներդաշնակ կառուցվածք ևն: Մ-ի շարժումը լինում է վերընթաց, վարընթաց, միևնույն բարձրության պահպանումով, ավելի հաճախ՝ ալիքաձև: Բոլոր շարժումների դեպքում առավել բնորոշ է աստիճանական ընթացքը, որը սովորաբար ընդմիջվում է այս կամ այն լայնքի թռիչքներով: Մեղեդային գծի շարժման վերելքների և անկումների մեջ արտացոլվում է հուզականության սաստկացումը և մարումը, լարումը և պարպումը, որի շնորհիվ էլ Մ. դրսևորվում է որպես երաժշտության հուզական-կերպարային բովանդակության կրող, մասնակցում նրա ձևակառուցման պրոցեսին: Բազմաձայն երաժշտության մեջ պարզորոշ առանձնանում է ընդհանուր շարժումից և ընկալվում որպես որոշակի երաժշտական միտք, որի առավել վառ (քան ընդհանուր շարժումը) արտահայտչականությունը պայմանավորված է անհատականացված երաժշտական նյութի շարժման յուրահատուկ տրամաբանությամբ: Ոչ մեղեդային շարժման հետ համեմատած, Մ. (անկախ երաժշտության ոճից և ժանրից), առավել հագեցված լինելով կոմպոզիցիոն հնարներով, տվյալ ընդհանուր շարժման խտացված, ընդհանրացված ձևն է: Սակայն մեղեդիական և ոչ մեղեդիական շարժումների միջև գոյություն չունի խիստ անջրպետ: Վոկալ երաժշտության մեջ Մ. բնորոշվում է երգայնությամբ, ցայտուն ներդաշնակ կերտվածքով ու ճկունությամբ և, այդ առումով, մոտիկ է մարդկային խոսքի ելևէջային բնույթին: Գործիքային երաժշտության մեջ Մ. զերծ է երգչական ձայնի հնարավորությունների որոշ՝ բնական սահմանափակումներից, նրանում, վոկալ երաժշտությանը հատուկ հնարների հետ մեկտեղ, օգտագործվում են նաև այս կամ այն նվագարանի տեխ. հնարավորությունները (այստեղից՝ ստորաբաժանումը վոկալ և գործիքային Մ-ների): Մ-ի բնույթը, ձևը, տեսակը, ինչպես նաև կառուցվածքային առանձնահատկություններն ու ծավալը շատ կողմերով պայմանավորված են նաև ստեղծագործության ժանրային պատկանելությամբ, երաժշտության ազգային երանգով ու ոճով: Միաժամանակ, գոյություն չունի այնպիսի «օրինակելի» Մ., որը հավասարապես բավարարեր տարբեր դարաշրջանների երաժշտական ուղղությունների բնորոշ մտածելակերպի պահանջները: Ուստի Մ., որպես բովանդակային կատեգորիա, հարաբերական է և նրա գնահատականը պահանջում է յուրաքանչյուր կոնկրետ դեպքում պատմական մոտեցում: Միաձայն երաժշտության մեջ Մ. մարմնավորում է ավարտված ամբողջական երաժշտական կերպար: Այս առումով բնորոշ են տարբեր ժողովուրդների ժող. երգերի մեղեդիները: Հայ ժող. և ժողովրդապրոֆեսիոնալ երաժշտության տարբեր ճյուղերը (գյուղական, քաղաքային, գուսանական, աշուղական, հոգևոր ևն) հարուստ են հնագույն դարերից մեզ հասած ու հղկված վոկալ և գործիքային Մ-ների բազմազան տեսակի նմուշներով (տես նաև *Մոնոդիա*), որոնցում մեղեդիակերտման վարպետությունը հասցված է բարձրագույն մակարդակի:

Գրկ. Т о х Э., Учение о мелодии, пер. с нем., М., 1928; Б е л я е в а-Э к з е м п л я р с к а я С., Я в о р с к и й Б., Структура мелодии, М., 1929; М а з е л ь Л., О мелодии, М., 1952; Riemann H., Neue Schule der Melodik, Hamburg, 1883. Ն. Դերոյան

**ՄԵՂՄԱՍՈՒԹՅՈՒՆ**, գ ե ղ ա ս ո ւ թ յ ո ւ ն, անհարմար, տհաճ, կոպիտ համարվող բառերի և արտահայտությունների փոխարինումը վայելուչ հոմանիշներով, խոսքի կառուցման եղանակ, երբ քաղաքավարական և այլ նկատառումներով նվազեցվում, մեղմացվում են բացասական հասկացությունները դրանց ոչ ուղղակի արտահայտ-

ման միջոցով (օրինակ՝ **ճիշտ չեք ասում**, փոխանակ՝ **սուտ եք ասում**, **ոչ գեղեցիկ**, փոխանակ՝ **տգեղ**): Որպես ոճաբանական դարձույթ Մ. գործադրվում է գրավոր խոսքում և հարում *շրջասությանը*: Մեղմասական խոսքը հաճախ աչքի է ընկնում քաղաքավարական, hորդորական, մեղմական բնույթի բառերի առատությամբ. **չէի՞ք բարեհաճի փոխանցել այս տոմսակը**, փոխանակ՝ **փոխանցեցե՛ք**: Մ. հատուկ է նաև ժող. լեզվամտածողությանը, օրինակ՝ **սիրտ թափել**, փոխանակ՝ **փսխել**: Մ. կարող է արգելաբանության (տաբու) հետևանք լինել, երբ սնոտիապաշտական, ավանդական կամ այլ պատճառով արգելքի ենթարկված որևէ առարկայի կամ երևույթի անվան փոխարեն գործածվում է մեղմասական ձևը՝ **էծերը եկան**, փոխանակ՝ **սատանաները եկան**, **պարան**, փոխանակ՝ **օձ**: *Ֆ. Խլղաթյան*

**ՄԵՂՄԻՉ**, մեքենաների և կառույցների կոնստրուկցիաներում տատանումների մարման և հարվածների մեղմման համար ծառայող սարք: Տարբերում են մեխանիկական, հիդրավլիկական և պնևմատիկ Մ-ներ: Մ. կիրառում են անհարթ ճանապարհով ավտոմոբիլի շարժման ժամանակ տատանումների մարման, ինքնաթիռի վայրէջքի ժամանակ հարվածի մեղմման համար ևն: Մ-ի կոնստրուկցիաներում օգտագործում են զսպաններ, ռետինե տարրեր, ինչպես նաև հեղուկներ և գազեր:

**ՄԵՂՄՈՑ**, սուրդին (ֆրանս. sourdine, իտալ. sordina, < լատ. surdus — խուլ, խուլ հնչող), երաժշտական գործիքների հնչումը խլացնող և երանգը մասնակիորեն փոխող հարմարանք: Լարային աղեղնավոր գործիքների համար փայտից, մետաղից կամ պլաստմասսայից պատրաստված սեղմիչ է, որ հագցվում է «հշուկի» վրա, փողային մունդշտուկավոր գործիքների համար՝ մետաղից, փայտից կամ ստվարաթղթից պատրաստված տանձաձև անոթ, որ տեղադրում են փողաբերանում:

**ՄԵՂՎԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆ**, մեղվապահություն, գյուղատնտեսության ճյուղ. զբաղվում է մեղրատու մեղուների բուծմամբ՝ *մեղր*, *մեղրամոմ*, *ակնամոմ*, *մեղվակաթ*, ծաղկափոշի, *մեղվաթույն* ևն ստանալու, ինչպես նաև գյուղատնտեսական բույսերի խաչաձև փոշոտումն ապահովելու համար: Մ. հայտնի էր դեռևս նախնադարում: Զարգացել է մի քանի փուլով. վայրի Մ. (մեղրը և մոմը մարդիկ հայթայթում էին վայրի մեղուների բներից), փչակափեթակային Մ. (մեղուներին պահում էին փչակներում, չքանդվող փեթակներում), կոճղափեթակային Մ. (մեղուներին պահում էին կոճղերում), շրջանակավոր Մ. (մեղուներին բուծում են հանվող շրջանակներով հավաքվող փեթակներում): Ռուս մեղվաբույծ Պ. Ի. Պրոկոպովիչի շրջանակավոր հավաքովի փեթակի (1814) և չեխ Ֆ. Գրուշկայի մեղրաքամ մեքենայի (1865) գյուտերից հետո շրջանակավոր փեթակային Մ. շատ երկրներում դարձավ գյուղատնտեսության բարձրապրանքային ճյուղերից մեկը: Մ-յան գիտական հարցերի մշակմամբ զբաղվել են Ա. Մ. Բուտլերովը, Մ. Ա. Դերնովը, Ի. Ա. Կաբլուկովը, Ն. Մ. Կուլագինը ևն: Մեծ ավանդ են ներդրել նաև արտասահմանյան գիտնականներ Ֆ. Ցուբերը (Շվեյցարիա), Լ. Լանգստրոտը (ԱՄՆ), Ի. Մերինգը, Է. Ցանդերը (Գերմանիա) ևն:

ՍՍՀՄ-ում 1979-ին կար մոտ 9,2 մլն մեղվաընտանիք, արտադրվել է մոտ 100 հզ. *տ* մեղր: Մեղվաբուծական խոշոր տընտեսություններ են (մինչև 20 հզ. մեղվաընտանիք) կազմակերպված ՌՍՖՍՀ-ում (հատկապես Բաշկիրիայում, Հեռավոր Արևելքում, Սիբիրում), Ուկր., Ադրբ., Հայկ., Ղազախ. ՍՍՀ-ներում: 1975-ին աշխարհում հաշվվում էր մոտ 40, այդ թվում ԱՄՆ-ում՝ 4,7, Մեքսիկայում՝ 1,8, Թուրքիայում՝ 1,7, Լեհաստանում՝ 1,4, Ֆրանսիայում՝ 1,0 մլն մեղվաընտանիք:

Հայաստանը Մ-յան հնագույն կենտրոն է: Դեռևս Քսենոփոնը (մ. թ. ա. 430—355) հիշատակել է, որ Հայաստանի լեռնային գյուղերում եղել են բազմաթիվ փեթակներ: Մ-յան զարգացման մասին են վկայել նաև հայ պատմիչները (Մովսես Խորենացի, Հովհաննես Դրասխանակերտցի և ուրիշներ): Հայաստանում տարածված են եղել մեղվի դեղին ու գորշ գույնի պոպուլյացիաները (դրանք պահպանվել են նաև ներկայումս), առաջնությունը տըրվել է դեղին մեղվին: Ձեռագրերում հիշատակվում են նաև բույսերի փոշոտման գործում մեղուների դերի մասին: 1904-ին մեղվաընտանիքների թիվը Հայաստանում 18 հզ. էր, 1912-ին՝ 25 հզ., 1918—1920-ին՝ 15—16 հզ.: Սովետական իշխանության հաստատումից հետո Մ. սկսեց բարձր տեմպերով զարգանալ: 1931-ին Երևանում կազմակերպվեց Անդրկովկասյան մեղվաբուծական զոնալ կայան (1933-ին վերանվանվեց Մեղվաբուծական հայկ. զոնալ կայան), որը 1937-ին միացվեց ՀՍՍՀ անասնապահական փորձակայանին: Այստեղ մշակվել են մեղվաընտանիքների բազմացման և մեղուների մթերատվության բարձրացման համալիր միջոցառումներ: 1944-ին Անասնապահական փորձակայանը վերածվեց Անասնապահության ԳՀԻ-ի, որտեղ ստեղծվեց մեղվաբուծության բաժին: 1958-ին վերջինիս բազայի վրա կազմակերպվեց Մեղվաբուծության փորձակայան: 1966-ին Մեղրու շրջանում հիմնվեց մեղվաբուծության հատուկ տոհմային տնտեսություն, որտեղ բուծվում են *հայկական դեղին մեղուներ* (շրջանը 1966-ից հայկ. դեղին մեղուների արգելանոց է): 1979-ին, 1000 շնչին ընկնող մեղվաընտանիքների քանակով, ՀՍՍՀ աշխարհում առաջինն էր (մեղվաընտանիքների ընդհանուր քանակը՝ 150 հզ.):



Մայր մեղուն մեղուների հետ

Մ-յան ղեկավարությունն իրականացնում է ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության մեղվաբուծության վարչությունը: Գիտական աշխատանքներ են տարվում Երևանի անասնաբուժական-անասնաբուժական ինստ-ի մանր անասնաբուծության ամբիոնում, գյուղատնտեսության մինիստրության մեղվաբուծության փորձակայանում:

*Գրկ*. Կոթողյան Ա. Մ., Վարդանյան Հ. Հ., Թումանյան Զ. Ի., Մեղվաբուծություն, Ե., 1961: *Ա. Կոթողյան*

**ՄԵՂՎԱԹՈՒՅՆ**, ապիտոքսին (լատ. apis — *մեղու* և հուն. τοξικόν — թույն), աշխատավոր մեղվի խայթող օրգանի թեյանման գեղձի արտազատուկ: Անգույն, թանձր, յուրահատուկ հոտով դառնահամ հեղուկ է: Քիմ. բաղադրությունը դեռևս լրիվ ուսումնասիրված չէ: Պարունակում է կենսաբանորեն ակտիվ սպիտակուց (մելիտին), ֆերմենտներ (հիալուրոնիդազ, լեցիտինազ A), ազատ ամինաթթուներ, հիստամին, մրջնաթթու և այլ թթուներ, ճարպեր, ցնդող յուղեր, որոշ միկրոտարրեր ևն: Մ-ի ազդող նյութերից են հիստամինի գլիկոզիդը, լիպիդները և սապոնինանման (կենդանական ծագման) նյութերը: Խտությունը 1,1313 *գ/սմ*³ է, օդում արագ պնդանում է: Հեշտ լուծվում է ջրում, ավելի դժվար՝ մրջնաթթվում և 60% սպիրտում: Ջերմակայուն է (սառեցումը և տաքացումը մինչև 115°C չեն փոխում նրա հատկությունները): Մեղուն խայթելիս արտադրում է 0,2—0,3 *մգ* թույն, մահացու քանակը՝ մոտ 0,2 *գ* (500—1000 խայթոց): Մ. ունի հակաբորբոքային և խոլինոլիտիկ ազդեցություն: Մ-ի պատրաստուկները (վենապիոլին, տոքսապին, ապիզարտրոն, վիրապին) օգտագործվում են լուծույթներում, քսուքներում, էլեկտրաֆորեզի միջոցով մի շարք հիվանդությունների՝ հոդացավերի, մկանաբորբերի, նյարդացավերի, ռադիկուլիտի, տրոֆիկ (սնուցողական) խոցերի, թրոմբոֆլեբիտի ևնի բուժման համար: Հակացուցված է վարակիչ, լյարդի, երիկամների, արյան, սիրտ-անոթային համակարգի, հոգեկան հիվանդությունների, շաքարախտի և հատկապես Մ-ի նկատմամբ անհատական գերզգայունության դեպքում: *Ա. Կոթողյան*

**ՄԵՂՎԱԹՈՒՓ** (Laburnum), ոսկե անձրև, թիթեռնածաղկավորների ընտանիքի տերևաթափ ծառերի կամ թփերի (մինչև 5 *մ* բարձրությամբ) ցեղ: Տերևները եռամասնյա են, հերթադիր, երկար տերևակոթունով: Ծաղիկները երկսեռ են, վառ դեղին, կախվող ողկույզներով (այստեղից՝ «ոսկե անձրև» անվանումը): Պտուղը բազմասերմ ունդ է: Հայտնի 3 տեսակները վայրի վիճակում աճում են Հարավային Եվրոպայում, Փոքր Ասիայում: Առավել տարածված է անագիրատերև Մ. (L. anagyroides), որն ունի բարձր դեկորատիվ նշանակություն և լայնորեն օգտագործվում է կանաչապատման մեջ: ՀՍՍՀ-ում մշակվում է Երևանում, Դիլիջանում, Կիրովականում, Ստեփանավանում: Մեղրատու է, պարունակում է ցիտիզին՝ թունավոր ալկալոիդ:

**ՄԵՂՐԱՇԱՏ**, գյուղ Հայկական ՍՍՀ Ամասիայի շրջանում, շրջկենտրոնից 16 *կմ* հարավ-արևմուտք: Կոլտնտեսությունն զբաղվում է անասնապահությամբ, հա-


Մեղրաշատ

ցահատիկի, կերային կուլտուրաների, շաքարի ճակնդեղի մշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, բուժկայան:

**ՄԵՂՐԱՇԵՆ**, գյուղ Հայկական ՍՍՀ Արթիկի շրջանում, շրջկենտրոնից 7 *կմ* հյուսիս-արևմուտք: Կոլտնտեսությունն զբաղվում է հացահատիկի, կերային կուլտուրաների, ճակնդեղի, ծխախոտի մշակությամբ, այգեգործությամբ, մեղվաբուծությամբ և անասնապահությամբ: Ունի միջ-


Մեղրաշեն

նակարգ դպրոց, ակումբ, 2 գրադարան, մանկապարտեզ, կինո, բուժկայան: Գյուղում և շրջակայքում պահպանվել են Ջավլու, Մանասի խարաբեք, Աբրահամի խարաբա գյուղատեղիները, եկեղեցի, խաչքարեր, դամբարաններ, զերեզմանոցներ: Հիմնադրել են Կարսից, Բասենից եկածները 1828—29-ին:

**ՄԵՂՐԱՏՈՒ ԲՈՒՅՍԵՐ**, մ ե ղ ր ա տ ու ն ե ր, ծածկասերմ կամ ծաղկավոր բույսերի մեծ խումբ, որոնցից մեղուները *նեկտար* և ծաղկափոշի են հավաքում: Նեկտարն արտադրվում է ծաղկի խորքում, վարսանդի և առէջքների հիմքի մոտ, իսկ երբեմն, դրանից դուրս (ցողունի, տերևի ևնի վրա) գտնվող տարբեր ձևի նեկտարանոցներում: Առանձին տեսակի մեղրատուների մեկ ծաղկի արտադրած նեկտարի քանակը միատեսակ չէ. օրինակ Coryonthes — ցեղի խոլորձի մեկ ծաղիկն արտադրում է մոտ 30 *գ*, իսկ սովորական լորենունը՝ 0,5—7,46 *մգ* նեկտար: Նեկտարարտադրությունը բույսերի ծաղկման սկզբին դանդաղ է, առէջքների փոշանոթները պատռվելու պահին հասնում է առավելագույնի և դադարում է բեղմնավորումից հետո: Որոշ Մ. բ. բացի նեկտարից արտադրում են նաև խեժանյութեր, որոնցից մեղուներն ակնամոմ են պատրաստում: Բույսերի նեկտարարտադրության ունակությունը ձևավորվել է էվոլյուցիայի պրոցեսում, որպես միջատներով խաչաձև փոշոտման հարմարվածություն, որը նպաստում է, հաճախ նաև որոշում մեղրատուների բարձր բերքատվությունը: Նեկտարարտադրությունը և մեղուների կողմից նեկտարի հավաքելը համընկնում են բույսերի ծաղկման շրջանին: ՍՍՀՄ-ում տարածված են ավելի քան 1000 Մ. բ., որոնցից մեղվաբուծության համար առավել արժեքավոր են 200-ը: Լավագույն մեղրատուներից են. լորենին, դաշտային թխկին (մեկ *հա*-ից ստացվում է 1000 *կգ* մեղր), սպիտակ և դեղին ակացիաները (350—500 *կգ/հա*), խնձորենին, տանձենին, բալենին, կեռասենին, սալորենին (20—30 *կգ/հա*), համեմը, իշառվույտը, երեքնուկը, առվույտը (100—300 *կգ/հա*), կորնգանը (90—400 *կգ/հա*), հնդկացորենը, արևածաղիկը (30—90 *կգ/հա*): Մեղրատու են նաև բանջարաբոստանային, մերձարևադարձային գոտեթե բոլոր բույսերը: Մ. բ. տարածված են հիմնականում մարգագետիններում և խոտհարքներում:

*Պ. Սեռոբյան*

**ՄԵՂՐԱՔԱՄԻՉ ՄԵՔԵՆԱ**, կենտրոնախույս ուժի ազդեցությամբ մեղրահացից մեղրը քամող մեքենա: Ստեղծել է (1865-ին) չեխ մեղվաբույծ-կոնստրուկտոր Գրուշկան (մինչ այդ մեղրը քամել են մամլիչներով): Մ. մ-ները կազմված են արտաքին կաթսայից, ներքին թմբուկից (ռոտորից), որտեղ տեղավորում են մեղրով լցված մեղրահացերը (շրջանակները) և հաղորդակից (շարժակ): Ռոտորի պտտման ժամանակ, կենտրոնախույս ուժի ազդեցությամբ, մեղրը ցայտում և թմբուկի պատերով ծորում է մինչև կաթսայի հատակը, որտեղից ծորակով հոսում է դուրս: Տարբերում են լարային (շրջանակները տեղադրում են լարի երկարությամբ), շառավղային (շրջանակները դասավորում են շառավիղներով) և խառը (կոմբինացված) Մ. մ-ներ:

*Ա. Կոթողյան*

**ՄԵՂՐԻ**, գետ Հայկական ՍՍՀ Մեղրու շրջանում, Արաքսի ձախ վտակը: Երկարությունը 36 *կմ* է, ավազանը՝ 274 *կմ*²: Սկիզբ է առնում Զանգեզուրի լեռնաշղթայի հվ-արլ. լանջի Կապույտ լճից: Վերին մասում հոսում է սառցադաշտային տրոգով, կենտրոնական մասում հովիտը V-աձև է, ստորին հոսանքում վերջանում է արտաբերման կոնով: Ունի ձնաանձրևային և ստորերկրյա սնում: Միջին ծախսը 3,34 *մ²/վրկ* է, տարեկան հոսքը՝ 102 մլն *մ³*: Վարարում է գարնանը: Սելավաբեր է:

**ՄԵՂՐԻ**, քաղաքատիպ ավան (1959-ից) Հայկական ՍՍՀ-ում, համանուն շրջանի վարչական կենտրոնը: Գտնվում է Մեղրի գետի ստորին հոսանքի աջ ափին, հեռավորությունը Երևանից 264 *կմ* է: Մ-ում կան պահածոների, գինու, պանրի, խճաքարի գործարաններ: Գործում են «Զովունի» և «Հայզորգ» տեղական արտադրական միավորումների մասնաճյուղերը, կոմունալ և կենցաղսպասարկման գրասենյակներ, շինվերանորոգման տեղամաս, «Հայգյուղտեխնիկայի» բաժանմունք, շրջանային սպառողական կոոպերացիա (հիմնադրված՝ 1901-ից): Կան 2 միջնակարգ (1-ը՝ ռուս.), ութամյա, երաժշտական, սպորտդպրոցներ, կապի բաժանմունք, կուլտուրայի տուն, հիվանդանոց, պոլիկլինիկա, կինոսարք:

Մ-ի տարածքը բնակեցված է եղել դեռևս նախնադարում: Բուն քաղաքում և շրջակայքում հայտնաբերվել են բրոնզի դարաշրջանի պարզունակ, տերևաձև շեղբով և շրջանակավոր դաստակով դաշույններ, երկաթի լայն տարածման ժամանակաշրջանի (մ. թ. ա. VII—VI դդ.) իրեր (բրոնզե ապարանջաններ, մանյակներ, զարդավահանիկներ, սարդիոնից ու մածիկից ուլունքներ, երկաթե դանակներ ևն): Առանձին հետաքրքրություն են ներկայացնում «Կաուրի» խխունջատեսակից պատրաստված կախիկը և բրոնզե լուսնաձև զարդը:

906-ին Տաթևի մայր տաճարի կառուցումից հետո Սմբատ Բագրատունին Մ-ին շնորհել է Կարճավան անվանումը: 1105-ին Սյունյաց Գրիգոր Բ թագավորի օրոք սելջուկ-թուրքերը գրավել են Մ.: 1126-ին Մ-ում կոտորածներ են կազմակերպել ամիր-Հարոն ամիրայի հրոսակները: 1157-ին Մ. կրկին ենթարկվել է ասպատակության:

***Ճարտարապետությունը***: Ձորի հանդիպակաց լանջերին խիտ, դարավանդաձև փռված են Մ-ի երկու Մեծ և Փոքր թաղերը: Բնակավայրի կորիզը եղել է ձախափնյա, Մեծ թաղի եկեղեցու շուրջը ամֆիթատրոնաձև դասավորված մասը, որի ստորոտում էին դպրոցը, ժողովարանը և շուկան: Ավանի ոլորապտույտ փողոցներն ու նրբանցքներն աչքի են ընկել ցածրահարկ շենքերի՝ որթատունկով զարդարված, շարքերից դուրս կարկառված պատշգամբներով, երբեմն նաև կամրջաձև շինություններով, որոնց ներքին ձևավորման մեջ ուշագրավ են հարթ ծածկերը պահող խոյակավոր սյուները, փորագրազարդ դռները, ռիթմիկ դասավորված որմնախորշերը, գաջազարդ բուխարիկները, փայտե նախշազարդ վանդակներով պատած լուսամուտներն ու ձևավոր առաստաղները:

Մ-ի մեծ թաղի Ս. Աստվածածին եկեղեցին (XVII դ.) քառամույթ գմբեթավոր բազիլիկ է, բավական նեղ կողային նավերով, խորանի երկու կողմում ուղղանկյուն ավանդատներով: Ուշագրավ է երկու տարբեր շինանյութերի օգտագործումը՝ հիմնական ծավալը կառուցված է բազալտից, իսկ ութանիստ թմբուկով բարձր ու սլացիկ գմբեթը՝ աղյուսից: Եկեղեցին ներսից սվաղված է, բեմի պատը, մույթերը, ավանդատները զարդարված են XIX դ. որմնանկարներով: Մ-ի վանքի Ս. Հովհաննես եկեղեցին (XVII դ.) ունի նույն հորինվածքը, սակայն աղյուսաշեն գմբեթը բարձրանում է աղոթասրահի մեջտեղում, քառակուսի մույթերի վրա և ուղղակի դուրս գալիս երկթեք տանիքի միջից, օրգանապես չկապվելով ուղղանկյուն ծավալի հետ: Արմ-ից կից է եղել եռակամար բաց սրահ (այժմ՝ ավերակ): Փոքր թաղի եկեղեցին (XVII դ.) երկու զույգ մույթերով եռանավ բազիլիկ է, կառուցված բազալտից, իսկ տանիքի վրա բարձրացող զանգակատան փոքրիկ ռոտոնդան՝ աղյուսից: Մ-ի բերդը առաջին անգամ հիշատակվում է 1083-ին, երբ արդեն կանգուն էր ու հայտնի: XVIII դ. այն հիմնովին վերակառուցվել է: Բերդի վեց աշտարակները (չորս կլոր, երկուսն ուղղանկյուն) Մ-ի Մեծ թաղի հս-ում են, լեռնաշղթայի առանձին գագաթների վրա, պայտաձև ընդգրկելով ավանը: Կառուցված են կոպտատաշ ու անմշակ գրանիտե քարե-















Մ ե ղ ր ի. 1. Մեծ թաղի և բերդի ընդհանուր տեսքը, 2. Փոքր թաղի եկեղեցին (XVII դ.), 3. Մեղրու բերդի (վերակառուցվել է XVIII դ.) արևմտյան կլոր աշտարակը, 4. Մեծ թաղի Ս. Աստվածածին եկեղեցու (XVII դ.) ընդհանուր տեսքը, 5. Ս. Աստվածածին եկեղեցու որմնանկար (XIX դ.), 6. Փոքր թաղի բնակելի տներից (XIX դ.), 7. Մեղրու վանքի Ս. Հովհաննես եկեղեցու (XVII դ.) արևմտյան ճակատը

րից, կավե շաղախով: Շարվածքում, աշտարակի ողջ պարագծով, որպես հակաերկրաշարժային գոտիներ օգտագործված են փայտե հեծաններ: Բոլոր աշտարակների պատերը դրսից դեպի վեր նեղանում են, որը նույնպես ապահովում է նրանց կայունությունը: Կլոր աշտարակների հատակագծերը կանոնավոր շրջագծեր են (5,5 մ արտաքին տրամագծով): Նրանց հրակնատները բացված են ամբողջ շրջագծով, ճառագայթաձև, իսկ ուղղանկյուն աշտարակներինը՝ շախմատաձև: Թե՛ ուղղանկյուն, թե՛ կլոր աշտարակները երկհարկանի են եղել: Բերդն իր ճարտ-յամբ եզակի է հայկական ամրաշինության մեջ. այն չունի պարսպապատեր (սրանց փոխարինել են լեռնաշղթաները), իսկ հրազենի օգտագործման դեպքում բնակավայրը հնարավոր է եղել հսկողության տակ վերցնել որոշ հեռավորությունից:

Սովետական շրջանում Մ. բարեկարգվել և ընդարձակվել է հիմնականում 1950-ին հաստատված գլխավոր հատակա-



Արտադրամաս Մեղրու գինու գործարանում

գծի (ճարտ. Հ. Դավթյան) համաձայն: Երկրորդ գլխավոր հատակագիծը մշակվել է 1972-ին (ճարտ-ներ՝ Վ. Միրզոյան, Գ. Գյուրջյան, Գ. Սուխուդյան):

*Գրկ.* Ստեփանոս Օրբելյան, Պատմություն նահանգին Սիսական, Թ., 1910: Պապուխյան Ն. Ծ., Սյունիքի ժողովրդական ճարտարապետությունը, Ե., 1972: Հարությունյան Մ.Մ., Սյունիքի XVII—XVIII դարերի ճարտարապետական համալիրները, Ե., 1973: Ումառյան Ս. Հ., Սյունիքը դիցարան, Ե., 1981: *Յու. Առաքելյան, Ն. Պապուխյան, Մ. Հասրաթյան*

**ՄԵՂՐՈՒ ԲԱՐԲԱՌ**, հայերենի բարբառ: Ըստ ձևաբանական դասակարգման պատկանում է հայ բարբառների «ս» («լիս») ճյուղին, ըստ բազմահատկանիշ վիճակագրական դասակարգման՝ արևելյան բարբառախմբին: Խոսվել է (մինչև 1930-ական թթ.) Մեղրիում: Բաղաձայնական համակարգը եռաստիճան է (բ, պ, փ): Ունի ժամանակակից գրական հայերենի բոլոր բաղաձայնները, բացի **ֆ**-ից, և **գ**$^{յ}$, **կ**$^{յ}$, **ք**$^{յ}$ քմայինները: Ձայնեղ պայթականները կայուն են և պահպանում են իրենց ձայնեղությունը նաև ր-ից հետո (մարդ>մարդ, **արջ**>**առջ**): Ձայնավոր հնչյուններն են՝ **ա**, **օ**, **ու**, **ի**, **է**, **ը**, **ա̈**, **օ̈**, **ու̈**, **ի`**, **ը**$^{է}$: Առկա են ձայնավորների պատմական հետևյալ փոփոխությունները՝ **ա**>**ա̈**, **է**. **ե**>**ի**, **ը**$^{է}$. **ո**>**օ̈**, **ու**. **ու**>**ու̈**, **օ**. **ի**>**է**, **ը**$^{է}$. **ի̣**>**ի`**: Հին հայերենի երկբարբառների դիմաց պարզ ձայնավորներ են՝ **այ**>**ա**, **է.ոյ**>**ու̈**. **իւ**>**ու̈**. **աւ**>**օ**. **եա**>**ա**, **է**: Ձևաբանական համակարգին առավել հատուկ է կցականությունը: Գոյականների հոգնակին կազմվում է **ար** || **ա̈ր**(<եար), **նէ**(<անի), **ք** մասնիկներով: Անվանական հոլովումներն են՝ **ու**, **է**, **վա**, **էն**, **ա**: Ունի հինգ հոլովաձև: Բացառականը ձևավորվում է (**ն**)**է** կամ (**ւ**)**էնից**, գործիականը՝ (**ան**)**ավ**, ներգոյականը՝ (**ան**)**ամ** վերջավորություններով: Հայցականը տարբերակում է անձի և իրի առումները: Հատուկ անունները որոշյալ հոդ չեն ստանում: Բայի խոնարհումը իրացվում է սահմանական, ըղձական և հարկադրական եղանակներով: Որպես դերբայներ են հանդես գալիս անորոշը (աղիլ), անկատարը (ըղիս), հարակատարը (աղած), գերակատարը կամ անցյալը (աղալ), ապառնին (ըղըլացուկ, ըղըլասկան), ենթակայականը (ըղացող), մակբայականը (ըղալէն): Սահմանական եղանակը չունի պարզ ժամանակաձևեր: Նույնիսկ անցյալ կատարյալը բաղադրյալ կազմություն ունի (**աղալ ըմ** «աղացի»): Չեն պահպանվել օժանդակ բայի անցյալի ձևերը. դրանց իմաստը արտահայտվում է ներկայի ձևերի և **լա̈**(<լեալ) մասնիկի հարադրությամբ (իմ լա̈, իս լա̈): Բացակայում է **կ** եղանակիչը: Պայմանական եղանակի իմաստը արտահայտվում է անորոշ դերբայի և օժանդակ բայի համապատասխան ձևերի հարադրությամբ (աղիլ իմ «կաղամ»): Հարկադրականը կազմվում է **մէտիլ** եղանակիչով (մէտիլ աղիմ): Մ. բ. ունի հրամայականի անցյալի ձևեր, որոնք կազմվում են բուն հրամայականից՝ **լա̈** մասնիկի հավելմամբ (աղեր լա̈):

*Գրկ.* Ղարիբյան Ա., Հայ բարբառագիտություն, Ե., 1953: Աղայան Է., Մեղրու բարբառ, Ե., 1954: *Հ. Մուրադյան*

**ՄԵՂՐՈՒ ԼԵՌՆԱՇՂԹԱ**, գտնվում է Հայկական ՍՍՀ հարավ-արևելքում, Մեղրու և Ղափանի շրջաններում: Սկսվում է Զանգեզուրի լեռնաշղթայի հվ-արլ-ից, ձգվում արլ., ապա՝ հվ-արլ. մինչև Արաքսի հովիտը: Երկարությունը 59 *կմ* է, առավելագույն բարձրությունը՝ 3256 *մ* (Բաղացսար): Հիմնական մասը կազմում է երրորդականի գրանոդիորիտներից, գրանոսիենիտներից, սիենիտներից և գրանիտներից բաղկացած ինտրուզիան («Մեղրու պլուտոնը»): Մ. լ. ենթարկվել է տեկտոնական խախտումների: Ունի կուլիսանման դասավորություն և անհամաչափ կառուցվածք: Հս. լանջերն ուղղորդ են, կարճ: Հվ. լանջերը համեմատաբար փոքրաթեք են՝ մասնատված Մեղրի, Մալև, Շվանիձոր, Նյուվադի և այլ գետերի V-աձև հովիտներով: Վերջիններս ակունքային շրջանում ունեն ջրհավաք ձագարներ, գետաբերանային մասում՝ խոշոր արտաբերման կոներ: Օգտակար հանածոներից կան պղնձի և բազմամետաղային հանքավայրեր, մոլիբդեն, նեֆելինային սիենիտներ, ոսկու, արծաթի երևակումներ: Տիրապետում են անտառային դարչնագույն, լեռնատափաստանային և լեռնամարգագետնային հողերը: Լեռնալանջերին կաղնու և բոխու նոսր անտառներ են՝ շիբլյակի խմբակցություններով: Տարածված են օշինդրը, փետրախոտը, ուղտափուշը: Բարձրադիր վայրերը ծածկված են լեռնային մարգագետիններով: *Դ. Պողոսյան*

**ՄԵՂՐՈՒ ԿԻՐՃ**, գտնվում է Հայկական ՍՍՀ ծայր հարավում, Արաքս գետի հովտում: Ունի արմ-ից արլ. մոտ 43 *կմ* ձգվածություն: Խորությունը մինչև 800 *մ* է: Ամենացածր կետը ծովի մակարդակից բարձր է 390 *մ*: Առաջացել է Արաքս գետի խորքային էրոզիայի և երկրակեղևի դարավոր դանդաղ վերընթաց շարժման հետևանքով: Մ. կ. հս-ում եզրավորված է Զանգեզուրի և Մեղրու, հվ-ում՝ Ղարադաղի լեռնաշղթաներով:

**ՄԵՂՐՈՒ ՇՐՋԱՆ**, վարչական շրջան Հայկական ՍՍՀ-ում: Կազմվել է 1930-ի սեպտ. 9-ին: Սահմանակից է Ղափանի շրջանին, Ադրբ. ՍՍՀ-ին, Նախիջևանի ԻՍՍՀ-ին, հվ-ում՝ Իրանին: Տարածությունը 664 *կմ*² է, բն. 13405 (1979): Վարչական կենտրոնը Մեղրի քտա-ն է:

Քարտեզը տես 352-րդ էջից հետո՝ ներդիրում:

**Բնական պայմանները**: Մ. շ. գտնվում է Զանգեզուր ֆիզիկա-աշխարհագրական շրջանի հվ-ում: Կտրտված ռելիեֆով տիպիկ լեռնային շրջան է: Արմ-ում Զանգեզուրի լեռնաշղթայի համարյա միջօրեական ուղղությամբ ձգվող հվ. մասն է՝ 3754 *մ* առավելագույն բարձրությամբ: Նշանավոր են Գողթանսարը (3144 *մ*), Դալիկ լեռը (2386 *մ*) ևն: Հս-ում և հս-արլ-ում Մեղրու լեռնաշղթան է (Բաղացսար, 3256 *մ*), որի հվ. սանրաձև տարածվող և խոր կիրճերով (200—700 *մ* խորությամբ) միմյանցից բաժանվող լեռնաբազուկները վերջանում են Արաքսի հովտում: Հվ-ում, Արաքսի ձախ ափին են Ագարակի և Մեղրու հարթ տեղամասերը: Շրջանի ամենացածրադիր կետը 390 *մ* է (Մեղրու կիրճում): Տաշտունի լեռնանցքով (2400 *մ*) Մ. շ. կապվում է Ղափանի շրջանի հետ: Տարածքի զգալի մասը զբաղեցնում է գրանիտներից, գրանոդիորիտներից, մոնցոնիտներից կազմված ինտրուզիան (Մեղրու պլուտոնը): Շրջանի հս-արմ-ում առկա են ռելիեֆի սառցադաշտային ձևերը (տրոգներ, կարեր ևն): Բարձրադիր վայրերում տիրապետում է սառնամանիքային հողմահարումը: Օգտակար հանածոներից կան ոսկի (Լեհվազ), բազմամետաղներ, պղինձ, մոլիբդեն (Ագարակ, Լիճք), նեֆելինային սիենիտներ, երկաթ, կրաքար (Շվանիձոր): Ակտիվ սեյսմիկ շրջան է: Կլիման չոր մերձարևադարձային է, բարձրադիր վայրերում՝ ցուրտ լեռնային: Տարեկան միջին ջերմաստիճանը 14°C-ից (ցածրադիր վայրեր) —2°C է (բարձրադիր վայրեր): Հունվարի միջինը՝ համապատասխանաբար 0°C, —14°C, հուլիսինը՝ 26°C, 6°C, նվազագույնը՝ —22°C, —40°C, առավելագույնը՝ 42°C, 22°C: Տարեկան տեղումները 250—750 *մմ* են (առավելապես գարնանը): Կայուն ձյունածածկույթ (մինչև 70—90 *սմ*) գոյանում է բարձրադիր լեռնային վայրերում: Շրջանի տարածքով հոսում են Մեղրի, Տաշտուն, Կարճևան, Մալև, Շվանիձոր, Նյուվադի գետերը, որոնք սկիզբ են առնում Մեղրու լեռնաշղթայից և առաջացնելով միմյանց զուգահեռ կիրճանման հովիտներ ու արտաբերման խոշոր կոներ թափվում են Արաքսի մեջ: Կան բազմաթիվ աղբյուրներ (Նյուվադիի, Շվանիձորի, Ալդարայի, Կարճևանի ևն): Մ. շ-ում առկա է բնական լանդշաֆտների ուղղաձիգ գոտիականությու-

նը: Արաքսի հովտից մինչև 800—1000 *մ* բարձրությունները կմախքային, քարքարոտ հողերը ծածկված են ֆրիգանային բուսականությամբ, 1000—2600 *մ* բարձրություններում՝ կավաավազային անտառային գորշ հողերի վրա տարածված են անտառները: Հիմնական ծառատեսակներն են կաղնին, բոխին, թխկին, գիհին ևն, ավելի բարձր՝ անտառները փոխարինվում են ենթալպյան և ալպյան մարգագետնային բուսականությամբ: Բնորոշ կենդանիներն են վայրի խոզը, այծյամը, կզաքիսը, հովազը, անտառային կատուն ևն: Շատ են սողունները, թռչունները:

**Բնակչությունը**: 72%-ը հայեր են: Բնակվում են նաև ռուսներ, բելոռուսներ, ուկրաինացիներ, ադրբեջանցիներ և այլք: Խիտ է բնակեցված մերձարաքսյան հովտային շրջանը: Միջին խտությունը 1 *կմ²* վրա 20,2 մարդ է: Շրջանում կա 15 բնակավայր (այդ թվում՝ 2 քտա՝ Մեղրի, Ագարակ), 2 ավանային, 8 գյուղական սովետ: Մ. շ-ի բնակավայրերն են. Ագարակ, Ալդարա, Այգեձոր, Գուդեմնիս, Լեհվազ, Լիճք, Կարճևան, Կուրիս, Մարալզամի, Մեղրի, Նյուվադի, Շվանիձոր, Վահրավար, Վարդանիձոր, Տաշտուն:

**Պատմական ակնարկ**: Մ. շ-ի տարածքը բնակեցվել է դեռևս քարի դարի ժամանակաշրջանից: Մ. թ. ա. VI դ. այն ընդգրկվել է հայկ. միասնական պետության, մ. թ. ա. 189-ից մինչև I դ. սկիզբը՝ Արտաշեսյանների, ապա՝ հայ Արշակունիների թագավորության կազմի մեջ՝ որպես Սյունիքի նախարարական տոհմի տիրույթ: Մ. շ-ի տարածքը համապատասխանում էր Սյունիք «աշխարհի» Արևիք գավառին, որը հնուց հայտնի էր զարգացած այգեգործությամբ (հատկապես խաղողագործությամբ): 428-ից այն Սյունիքի մյուս գավառների հետ ընկել է Սասանյան Իրանի իշխանության տակ, 640-ական թթ. գրավվել արաբների կողմից: 886-ին Մ. շ-ի տարածքն ընդգրկվել է հայ Բագրատունիների թագավորության, 980-ական թթ. սկզբից՝ Սյունիքի թագավորության մեջ: XII—XIII դդ. ենթարկվել է սելջուկ-թուրքերի ասպատակություններին: XII դ. վերջից այն ազատագրվել և ընդգրկվել է Զաքարյան Հայաստանի կազմում, որպես Օրբելյան տոհմի կալվածք: Այնուհետև շրջանի տարածքն ընկել է մոնղոլ-թաթարների, թուրքմեն ցեղապետների և Սեֆյան Իրանի գերիշխանության տակ: 1603-ին բնակչությունը բռնությամբ տեղահանվել և զաղթեցվել է Սպահանի գավառ: 1730-ին Մ. շ-ի տարածքը գրավել են թուրք. զորքերը: 1735-ին Նադիր շահը, Արցախի և Զանգեզուրի հայ մելիքների զինական աջակցությամբ վերագրավել է այն: Մ. շ-ի տարածքի հայ բնակչությունն ակտիվորեն մասնակցել է Դավիթ Բեկի գլխավորած ազատագրական շարժմանը: Թուրք-պարսկական տիրապետության ժամանակ Մ. շ-ի տարածքի հայ բնակչությունը կրել է ծանր արհավիրքներ, ենթարկվել դաժան հարկահանության ու տնտ. կեղեքումների: 1805-ին Մ. շ-ի տարածքը միացվել է Ռուսաստանին և 1828-ից ընդգրկվել Ղարաբաղի պրովինցիայի (ստեղծված 1822-ին) կազմի մեջ: 1868-ից կազմել է Ելիզավետպոլի նահանգի Զանգեզուր գավառի մասը, սովետական կարգեր հաստատվելուց հետո, մինչև 1930-ը՝ Մեղրու գավառը:

Առաջին կուսակցական բջիջները Մ. շ-ում ստեղծվել են 1921-ին: Զանգեզուրում վերջնականապես սովետական կարգեր հաստատվելուց հետո, 1922-ի հունվարի 13-ին կազմակերպվում է Մեղրու գավառային կոմիտե: Գավառի 15 գյուղերում ստեղծված կուսակցական բջիջներն իրենց շարքերում ունեին 175 կոմունիստ: 1930-ի սեպտեմբերին, համապետության նոր վարչա-տերիտորիալ բաժանմամբ Մեղրու գավառային կոմիտեի փոխարեն ստեղծվում է Մեղրու շրջանային կուսակցական կազմակերպություն: Մինչև 1981-ի հունվ. 1-ը տեղի է ունեցել Մ. շ-ի կուսակցական կազմակերպության 38 կոնֆերանս: 1981-ի հունվարին շրջանում գործում էր 51 կուսակցական սկզբնական կազմակերպություն՝ 1160 կոմունիստով: 62 կոմերիտական կազմակերպություններում ընդգրկված են 2874 կոմերիտականներ:

Մ. շ-ում պահպանվել են XVII—XVIII դդ. բազմաթիվ ճարտ. հուշարձաններ՝ քառամույթ գմբեթավոր բազիլիկներ (Մեղրի, Տաշտուն), եռանավ բազիլիկներ (Մեղրի, նախկին Մալև), որմնամույթերով և որմնախորշերով թաղածածկ դահլիճներ (Կուրիս, Գուդեմնիս, Լիճք, Վահրավար, նախկին Ափկես, Ագարակ), կամուրջներ (Լիճք, նախկին Արևիկ, Վանք), ջրանցույց (Շվանիձոր), բերդ (Մեղրի):

**Տնտեսությունը**: Նախասովետական տարիներին տնտեսության հիմնական ճյուղը եղել է այգեգործությունը: Զբաղվել են նաև բամբակենու մշակությամբ և շերամապահությամբ: Մեղրու երկարաթել բամբակի ու բոժոժի մեծ պահանջարկ է եղել Մոսկվայում և Պարսկաստանում: 1901-ից գործել է Մեղրու սպառողական կոոպերացիան, որը զբաղվում էր ապրանքների ներմուծման, բամբակի և բոժոժի գնման, զտման և վաճառման աշխատանքներով: Սովետական կարգեր հաստատվելու առաջին տարիներին Մեղրիում բացվել է բամբակազտիչ գործարան: Հանրապետության համար կարևոր նշանակություն է ունեցել Մեղրու գրենայի գործարանի արտադրանքը: Վերջին տարիներին Մ. շ. դարձել է արդ.-գյուղատնտեսական շրջան: Արդյունաբերությանը բաժին է ընկնում շրջանի համախառն արտադրանքի 87%-ը: Շրջանի 103 հիմնարկ-ձեռնարկություններում աշխատում է 4636 մարդ, այդ թվում արդ. ձեռնարկություններում՝ 1598 մարդ (1979): Արդյունաբերության հիմնական ճյուղը լեռնահանքային արդյունաբերությունն է: 1963-ին շարք մտավ Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատը, որը տալիս է շրջանի արդյունաբերության համախառն արտադրանքի զգալի մասը: 1957-ից գործում է խճաքարերի գործարանը (Մեղրիում): Կարևոր ճյուղերից է սննդի արդյունաբերությունը: 1932-ին կառուցվեց Մեղրու պահածոների գործարանը, որի կարողությունը սկզբնական տարիների 100 հզ. պայմանական տուփից հասել է 5,5 մլն պայմանական տուփի (1979): Կան գինու (1951-ից), պանրի (1959-ից), հացի (1972-ից) գործարաններ (Մեղրիում): Մեղրիում գործում են «Զովունի» (կարի) արտադրական միավորումը, ինչպես նաև տեղական արդյունաբերության մի շարք ձեռնարկությունների մասնաճյուղեր: Մ. շ. էլեկտրաէներգիա ստանում է հիմնականում Անդրկովկասի միասնական էներգահամակարգից: 1937-ից գործում է Մեղրու ՀԷԿ-ը (տարեկան արտադրում է 2,5 մլն *կվտ·ժ* էլեկտրաէներգիա):

Գյուղատնտեսությունը տալիս է շրջանի արդյունաբերության համախառն արտադրանքի 13%-ը: 1978-ին Մ. շ-ի հողային ֆոնդը 10609 *հա* էր, որից վարելահողեր՝ 1905 *հա*, անտառներ՝ 9000 *հա*, արոտավայրեր՝ 7558 *հա*, խոտհարքներ՝ 447 *հա*, պտղատու և խաղողի այգիներ՝ 663 *հա*: Ոռոգվող հողատարածությունները կազմում էին 1363 *հա*: Ոռոգումը կատարվում է Կարճևանի ջրանցքով, Արաքս և Մեղրի գետերի վրա կառուցված ջրհան կայաններով: Բարենպաստ կլիմայական պայմանների շնորհիվ տարեկան ստացվում է 2—3 բերք: Մ. շ-ում կա 8 կոլտնտեսություն, 3 սովետական տնտեսություն: Գյուղատնտեսության բնագավառում աշխատում են բարձրագույն կրթությամբ 36 մասնագետ: Գյուղատնտեսության հիմնական ճյուղերն են այգեգործությունը, պտղաբուծությունը և անասնապահությունը: Վերջինս տալիս է գյուղատնտ. արտադրանքի 53%-ը: Շրջանում կա 19310 գլուխ մանր, 5250 գլուխ խոշոր եղջերավոր անասուն: Զբաղվում են նաև թռչնաբուծությամբ, խոզաբուծությամբ: Մ. շ-ի տարածքով (Արաքսի հովտով) անցնում է Երևան—Բաքու երկաթուղու 44 *կմ* հատվածը: Խճուղիների երկարությունը 140 *կմ* է, որից 51 *կմ*՝ կոշտ ծածկով: Շրջանում կա 7 կապի բաժանմունք:

**Առողջապահությունը**: Մ. շ-ում կա 2 հիվանդանոց (Մեղրի, Ագարակ)՝ 140 մահճակալով, 2 ամբուլատորիա, 4 բուժ. կետ, շտապ օգնության և 10 բուժական-մանկաբարձական կայաններ, 2 դեղատուն: Շրջանում կա 190 բուժաշխատող, որից 45-ը՝ բժիշկ:



Շրջանային հիվանդանոցը Մեղրիում

**Մշակույթը**: 1980/81 ուս. տարում Մ. շ-ում կար 9 միջնակարգ (1-ը՝ հեռակա), 5 ութամյա, 2 տարրական, 2 երաժշտական (Մեղրի, Ագարակ), 1 նկարչական (Մեղրի), մեկ սպորտդպրոց (Մեղրի), մեկ պրոֆտեխնիկական ուսումնարան (Ագարակ), 8 մսուր-մանկապարտեզ: Գործում են 23 գրադարան, 18 կուլտուրայի տուն (Լիճք, Կարճևան, Տաշտուն, Ալդարա, Շվանիձոր, Լեհվազ ևն) և ակումբային հիմնարկ,

կինոսարքավորում: Շրջանը ռադիոֆիկացված է, օգտվում են հեռուստատեսային հաղորդումներից: 1965-ից լույս է տեսնում «*Արաքս*» շրջանային թերթը:

*Յու. Առաքելյան*

Պատկերազարդումը տես 416–417-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակ XI:

**ՄԵՂՐՈՒՏ**, գյուղ, Հայկական ՍՍՀ Գուգարքի շրջանի վարչական կենտրոնը, Փամբակ գետի աջ ափին: Պտղատնկարանային սովխոզ-տեխնիկումն զբաղվում է նաև հացահատիկի, բանջարեղենի, կարտոֆիլի մշակությամբ և անասնապահությամբ: Ունի 2 միջնակարգ, երաժշտական և մանկապատանեկան մարզական դպրոցներ, կուլտուրայի տուն, 2 գրադարան, կապի բաժանմունք, կինո, կենցաղսպասարկման կոմբինատ, մսուր-մանկապարտեզ, ամբուլատորիա: Մ-ում գործում է Կիրովականի կարի միավորման մասնաճյուղը:



Մեղրուտ

**ՄԵՂՈՒ** մ ե ղ ր ա տ ու, ը ն տ ա ն ի (Apis millifera), մեղուների ցեղի (Apis) մեղվանմանների ենթաընտանիքի միջատ: Հայրենիքն է Հարավային Ասիան, որտեղից տարածվել է ամենուրեք: Ապրում է ընտանիքներով՝ փչակներում, ծերպերում և պատսպարաններում: Բազմանում է մեղվապարսով, սեռական վերարտադրությունը կատարվում է մայր մեղվի և բոռերի միջոցով: Զարգացած բազմաձևությունը, որն արտահայտված է ոչ միայն արուի և էգի, այլև իգական անհատների (մայր ու աշխատավոր մեղվի) մոտ, մեղվաընտանիքը դարձրել է կենսբ. ամբողջություն, որտեղ բոլոր անհատները (մայր մեղու, աշխատավոր մեղու, բոռ) փոխկապված են և ընդունակ չեն ինքնուրույն գոյության: Մեղվաընտանիքը բաղկացած է մեկ մայր, 60—80 հզ. աշխատավոր մեղվից և մի քանի հարյուր (երբեմն հզ.) բոռերից:




Մ ե ղ վ ա ը ն տ ա ն ի ք. *1.* մայր մեղու, 2. բոռ, *3.* աշխատավոր մեղու

Մ ա յ ր  մ ե ղ ո ւ ն (մարմնի երկարությունը՝ 20—25 *մմ*, զանգվածը՝ 200—250 *մգ*) լավ զարգացած սեռական օրգաններով էգն է և ընտանիքում կատարում է մեկ ֆունկցիա՝ ձվադրում: Սեռահասուն է դառնում մայրաբջջից (հյուսում են աշխատավոր մեղուները) դուրս գալուց 5—7 օր հետո: Ապրում է 5 տարի: Առավել արդյունավետ է մինչև 2 տարեկանը:

Ա շ խ ա տ ա վ ո ր  մ ե ղ ու ն ե ր ը (մարմնի երկարությունը՝ 12—14 *մմ*, զանգվածը՝ մոտ 100 *մգ*) չզարգացած սեռական օրգաններով էգերն են: Դրանք հյուսում են մեղրահացը, հավաքում նեկտար ու ծաղկափոշի, պատրաստում *մեղր*, կերակրում թրթուրներին, պահպանում բույնը, դրանում ապահովում պահանջվող խոնավություն և ջերմություն, կարգավորում բնական պարսը են: Ծաղկափոշի հավաքելու և տեղափոխելու համար ետին ոտքերն ունեն «խոզանակիկ» և «զամբյուղիկ», որովայնի ստորին կիսաօղակների վրա կան մոմային «հայելակ», մեղվակաթ արտադրող հատուկ գեղձեր են: Մեղվակաթով կերակրում են աշխատավոր մեղուների և բոռերի թրթուրներին մինչև 3 օրական հասակը, մայր մեղվի թրթուրին՝ զարգացման ամբողջ ընթացքում, իսկ մայր մեղվին՝ ձվադրման ընթացքում: Աշխատավոր մեղուները ձվադրում են միայն մայր մեղվի կորստի ժամանակ: Ձվերը բեղմնավորված չեն, դրանցից զարգանում են միայն բոռեր: Ապրում են 26—40 օր:

Բ ո ռ ե ր ը (մարմնի երկարությունը՝ 15—17 *մմ*, զանգվածը՝ 200 *մգ*) արուներն են, ունեն միայն մեկ ֆունկցիա՝ մայր մեղվի բեղմնավորում: Սեռական օրգանները լավ զարգացած են: Սեռահասուն են դառնում 8—14 օրում: Մեղվաընտանիքում ապրում են ամռան ամիսներին, մայր մեղվի բեղմնավորման շրջանում, երբ վերջինս դուրս է գալիս փեթակից: Մեղրատու մեղուները բաժանվում են եվրոպական, կովկասյան, աֆրիկական և ասիական խմբերի: Առավել հայտնի են եվրոպական տիպիկ, իտալ. մեղրատու, կովկասյան մեղրատու (լեռնային գորշ, դեղին կամ հայկ. դեղին), ռուս. անտառային, հեռավորարևելյան և այլ ցեղերը: Կովկասյան կամ հայկ. դեղին մեղուները տարածված են Անդրկովկասի և Հայկ. լեռնաշխարհի ցածրադիր, տաք շրջաններում: Խաղաղասեր են, արագ աճում և բազմանում են, կուտակում են շատ ակնամոմ, լավ պաշտպանվում են վնասատուներից, ունեն զարգացած հոտառություն: ՀՍՍՀ Մեղրու շրջանում դեղին մեղուների պահպանության համար ստեղծված է արգելանոց:

*Ա. Կոթողյան*

**«ՄԵՂՈՒ»**, բանասիրական, գրականագիտական, տնտեսական և երգիծական կիսամսյա հանդես: Լույս է տեսել 1856—1865, 1870—74-ին, Կ. Պոլսում: Խմբագիրներ՝ Հ. Սվաճյան (1856—62, 1870—72), Հ. Հովվյանց, Ա. Մուրադյան, Ա. Հայկունի (1863—65), Հ. Պարոնյան (1872—74): Ժամանակի առաջադիմական պարբերական: Պայքարել է հայ հետադիմական հոսանքների, կղերապահպանողական գաղափարախոսության, հոգևոր դասի, հայ մեծահարուստների և սուլթանական կառավարության դեմ: Սվաճյանի խմբագրության տարիներին լայն տեղ է հատկացրել Մ. Նալբանդյանի սոցիալ-քաղաքական հայացքներին, տպագրել նրա բանաստեղծությունները, ճառերը, հատվածներ «Կոմս Էմմանուելի հիշատակարանից»: Ներկայացրել է նմուշներ արևմտահայ արձակից, Սայաթ-Նովայի, Ազբար Աղամի և այլ աշուղների երգերը, Հ. Սվաճյանի, Գ. Օտյանի երգիծական գործերն ու թատերախոսականները, կատարել արտատպումներ Գամառ-Քաթիպայից: Բազմաթիվ հոդվածներ նվիրված են հայոց լեզվին, գրականությանը: Պարոնյանի խմբագրության տարիների թերթը համարվում է երգիծաբանի գրական ժառանգության անքակտելի մասը: Այստեղ են լույս տեսել նրա աֆորիզմները («Թե որ», «Ապտակք», «Ասկե ասկե» և այլ խորագրերով), քաղ. քրոնիկների շարքը, պատմվածքներ, ակնարկներ, որոնցում քննադատվել են եվրոպական դիվանագիտության խաղերը Հայկ. հարցի շուրջ, սուլթանական կառավարության հակաժողովրդական քաղաքականությունը, հայ կղերի և լիբերալ խավի հաշտվողական գործելակերպը, հայ կենցաղին խորթ եվրոպական նորամուծությունները: «Մ.»-ում են տպագրվել նաև Հ. Պարոնյանի հայատառ թուրք. գործերից շատերը («Ալաֆրանկա», «Պարահանդես», «Պարի դաս» ևն):

*Գ. Ստեփանյան*

**«ՄԵՂՈՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ»**, քաղաքական, բանասիրական և առևտրական շաբաթաթերթ, 1873-ից՝ օրաթերթ: Լույս է տեսել 1858—86-ին, Թիֆլիսում: Խմբագիրներ՝ Ս. Մանդինյան, Պ. Սիմոնյան (1863-ից):


ՄԵՂՈՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ

Ուներ կղերապահպանողական, հետադիմական ուղղություն, պայքարում էր «*Հյուսիսափայլ*»-ի և Մ. *Նալբանդյանի* դեմ, սուր բանավեճի մեջ էր «Մշակ»-ի և նրա խմբագրի հետ: Երկրորդ խմբագրի օրոք «Մ. Հ.»-ն դարձավ հայ ազգայինպահպանողական հոսանքի գաղափարախոսը, քննադատեց ցարիզմի ազգաձուլման քաղաքականությունը: Այդ շրջանում տպագրել է Մ. Նալբանդյանի, Ռ. Պատկանյանի, Ղ. Աղայանի, Գ. Սունդուկյանի, Մուրացանի, Հյուգոյի, Շ. Պետեֆիի և այլոց գործերը: Պարբերականին աշխատակցել են Ա. Հայկունին, Տերենցը,

Ս. Արծրունին, Հ. Առաքելյանը, Զ. Մսերյանը, Ա. Երիցյանը, Գ. *Արծրունին*:

*Լ. Գևորգյան*

**ՄԵՂՈՒՅՐԿ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Երզնկայի գավառում: Մ. գավառի ամենամեծ հայաբնակ գյուղն էր: 1909-ին ուներ 185 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ և արհեստներով: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին, Կամախի կիրճում: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՄԵՂՔ** իրավունքում, իրավական նորմի խախտումով վնասակար կամ հանրության համար վտանգավոր գործողության (անգործության) ներքին սուբյեկտիվ կողմը, անձի հոգեկան-իմացական վերաբերմունքը իր կատարած արարքի ու նրա հետևանքների նկատմամբ: Դրսևորվում է *դիտավորությամբ* և *անզգուշությամբ*: Ըստ սովետական իրավունքի, անձը քրեական պատասխանատվության կարող է ենթարկվել միայն այն դեպքում, եթե նրա գործողություններում առկա են *հանցակազմի* սուբյեկտիվ կողմի հատկանիշները, այսինքն՝ Մ.: Մ-ի ինստ. նախատեսվել է դեռևս հռոմ. օրենքներով: Մխիթար Գոշի, Սմբատ Սպարապետի դատաստանագրքերում, «Կանոնագիրք հայոց»-ում Մ-ի ձևերն ու տեսակները դրվում էին պատասխանատվության հիմքում: Սկսած բուրժ. հեղափոխությունների շրջանից Մ., որպես պատասխանատվության բացառիկ հիմք, ընդունվել և կիրառվում է նաև բուրժ. երկրների օրենսդրությամբ:

*Ա. Թովմասյան*

**ՄԵՃԻՏ-ԵՈԶԻԿ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Սեբաստիայի վիլայեթի Ամասիայի գավառում: 1915-ին ուներ մոտ 200 տուն հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ, ինչպես նաև արհեստներով, առևտրով: Կար եկեղեցի և վարժարան: 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ, բնակիչները ողջակիզվել են թուրք. ջարդարարների կողմից: Միայն մի քանի հոգու է հաջողվել փրկվել և անցնել Արևելյան Հայաստան:

**ՄԵՄԲՐԱՆ** (< լատ. membrana — թաղանթ), բարակ ճկուն թաղանթ, որը պրկվում է արտաքին ուժերի ազդեցությամբ և ձեռք բերում առաձգականություն: Մ. պետք է տարբերել թիթեղից, որի առաձգական հատկությունները կախված են նյութի տեսակից և հաստությունից: Պրկումն իրագործող արտաքին կոնտուրի ձևից կախված՝ Մ-ները լինում են ուղղանկյունաձև, կլոր, էլիպսաձև ևն: Մ-ի սեփական տատանումները կարելի է ներկայացնել *կանգուն ալիքների* համակարգերով, որոնք ունեն հանգուցային գծերի այս կամ այն պատկերը (հանգուցային գծերը բաժանում են Մ-ի՝ տարբեր փուլերով տատանվող մասերը, նկ.): Մ-ի ստիպողական տատանումները տեղի են ունենում արտաքին ուժերի ազդման հաճախականությամբ: Առաձգականության տեսության մեջ Մ. են անվանում այն բարակ ճկուն թիթեղը, որի ծռվածքի կոշտությունը հավասար է զրոյի: Մ. պատրաստում

Ուղղանկյունաձև (*ա*) և կլոր (*բ*) մեմբրանի սեփական տատանումների տեսքը: Սլաքներով ցույց են տրված հանգուցային գծերը. i, k-ն հարմոնիկների համարներն են:

են տարբեր նյութերից: Մետաղե Մ. կիրառվում է աներոիդներում, չափիչ հարմարանքներում, հեռախոսափողերում, ձայնագրիչ սարքերում: Ոչ մետաղական Մ. (ռետին, կաշի ևն) օգտագործվում է պնևմոավտոմատիկայի սարքերում, մեմբրանային (դիաֆրագմային) պոմպերում:

**ՄԵՄԵԼ** (Memel), Լիտվական ՍՍՀ *Կլայպեդա* քաղաքի նախկին անվանումը:

**ՄԵՄԼԻՆԳ** (Memling) Հանս (մոտ 1440, Զելիգենշտադ, Հեսսեն — 11.8.1494, Բրյուգգե), նիդերլանդացի նկարիչ: Սովորել է, հավանաբար, Ռոգիր վան դեր Վեյդենի մոտ, 1465-ից աշխատել Բրյուգգեում: Մ-ի ստեղծագործությունները աչքի են ընկնում հանդարտ տրամադրությամբ, հստակ գուներանգով, կրոնական տեսարանների բյուրգերական, կենցաղային մեկնաբանմամբ («Տիրամայրը սրբերի

Հ. Մեմլինգ. «Տիրամայրը մանկան հետ», հատված («Տիրամայրը և նվիրատու Մարտին վան Նիվենհովեն» երկպատկերի ձախակողմյան փեղկը, 1487, Հ. Մեմլինգի թանգարան, Բրյուգգե)

հետ» եռապատկերը, 1468, Ազգային պատկերասրահ, Լոնդոն): Միաժամանակ դրանց բնորոշ է հին նիդերլանդական արվեստի արտահայտչամիջոցների պահպանողական կիրառումը (Կույս Մարիամի կոստյոլի բեմի «Ահեղ դատաստանը», մոտ 1473, Գդանսկ): Մ-ի արվեստի հումանիստական տարրերն առանձնապես տեսանելի են դրսևորվել դիմանկարներում (մեծ մասամբ նվիրատուների) և «Բերսաբե» երփնագրում (մոտ 1485, Բադեն—Վյուրտեմբերգ երկրի թանգարան, Շտուտգարտ), որ նիդերլանդական գեղանկարչության մեջ հազվադեպ՝ բնական չափի կնոջ մերկ մարմնի պատկերումներից է:

**ՄԵՄՈՒԱՐՆԵՐ** (ֆրանս. mémoires — հուշեր), տես *Հուշագրություն*:

**ՄԵՄՓԻՍ** (հուն. Μέμφις, եգիպտ. Մեննեֆեր), քաղաք Հին Եգիպտոսում: Հիմնվել է մ. թ. ա. III հազարամյակի սկզբին, Վերին և Ստորին Եգիպտոսի սահմանում, Նեղոսի ձախ ափին: Եղել է Եգիպտոսի կրոնական, քաղ., մշակութային և արհեստագործական կենտրոն, Հին թագավորության (մ. թ. ա. XXVIII—XXIII դդ.) մայրաքաղաքը: Ալեքսանդրիայի հիմնադրումից (մ. թ. ա. 332—331) հետո կորցրել է նախկին նշանակությունը: Մ-ում պահպանվել են Պտահ աստծո տաճարի (մ. թ. ա. III հազարամյակ) մնացորդները, Նոր թագավորության ժամանակաշրջանի սֆինքս, Ռամզես II-ի երկու կոթողը (մ. թ. ա. XIV դ. վերջ — XIII դ. կես), Սերապիոնը: Թագավորների և ավագանու բուրգերն ու դամբարանները գտնվում են այժմյան *Գիզայի*, Սաքարայի, Աբուսիրի, Դաշուրի մոտ:

**ՄԵՅ ԼԱՆ ՖԱՆ** (1894—1961), չին դերասան, մանկավարժ, թատերական և հասարակական գործիչ: Կատարել է կանանց դերեր: 1910-ական թթ. ստեղծել է «արդի զգեստներով ներկայացման» («Սիրահարները հանդիպում են բանտում» ևն) և դասական սյուժեներով ու հնաոճ զգեստներով ներկայացման («Չան Է-ն փախչում է Լուսին» ևն) նոր տեսակներ: 1949-ից աշխատել է Պեկինի երաժշտական դրամայի թատրոնում, 1951-ից եղել Ավանդական երաժշտական դրամայի ԳՀԻ (ավելի ուշ՝ Ավանդական երաժշտական թատրոնի ակադեմիա) տնօրեն: Լավագույն դերերը խաղացել է «Տիեզերքի սուրը», «Զբոսանք այգում և ընդհատված երազ» և այլ ներկայացումներում: 1935, 1952 և 1957-ին այցելել է ՍՍՀՄ:

**ՄԵՅԵ** (Meillet) Անտուան (11.11.1866, Մուլեն—21.9.1936, Շատոմեյան, թաղված է Մուլենում), ֆրանսիացի լեզվաբան, հայագետ, սլավոնագետ, հասարակական գործիչ: Ֆրանս. ակադեմիայի (1924), արտասահմանյան շատ ակադեմիաների և գիտական ընկերությունների անդամ, Պետերբուրգի ԳԱ թղթակից անդամ (1906): 1885—89-ին սովորել է Սորբոնի համալսարանում: Աշակերտել է Մ. *Բրեալին*, Ֆ. դը *Սոսյուրին*, Օ. *Կարիերին*, որից սովորել է ժամանակակից հայերեն: 1890—91-ին եղել է Վիեննայի Մխիթարյան միաբանությունում, աշակերտել Հ. *Տաշյանին*, նրանից սովորել է գրաբար: 1891-ին այցելել է Հայաստան (երկրորդ անգամ՝ 1903-ին), Էջմիածնի մատենադարանում զբաղվել բանասիրական աշխատանքով, ուսումնասիրել գրաբարի հնչյունաբանությունը: 1902—05-ին գրաբար ու ժամանակակից հայերեն է դասավանդել Արևելյան կենդանի լեզուների դպրոցում, 1906—36-ին հնդեվրոպական լեզուների համեմատական քերականություն և ընդհանուր լեզվաբանություն՝ ֆրանս. կոլեջում: 1919-ին Ֆ. *Մակլերի* և ուրիշների հետ հիմնել է «Մոսիետե դեզ էտյուդ Ար-


Ա. Մեյե

մենիեն»-ը («Հայագիտական ընկերություն»-ը), 1920-ին՝ «Ռևյու դեզ էտյուդ Արմենիեն»-ը («Revue des Etudes Arméniennes»), 1921-ին՝ «Ռևյու դեզ էտյուդ սլավ»-ը («Revue des Études Slaves»): Ընդհանուր լեզվաբանական հայացքներով հարում է Ֆ. դը Սոսյուրի հիմնադրած հասարակագիտական ուղղությանը, հետազոտական սկզբունքներով՝ երիտքերականներին, տարբերվելով լեզվի էության և զարգացման պատճառների իր մեկնաբանությամբ: Հետևելով Ֆ. դը Սոսյուրին՝ Մ. լեզուն դիտել է որպես նշանների համակարգ: Լեզվական երևույթները և հատկապես լեզվի զարգացումը բացատրել է հասարակության զարգացման պայմաններով, իսկ լեզվի հասարակական էությունը կապել նրա հաղորդակցական գործառույթի հետ: Համեմատական լեզվաբանության մեջ ընդունել է լեզուների ցեղակցության և ծագումնաբանական դասակարգման սկզբունքները, հնդեվրոպական բարբառների փոխհարաբերությունների ու տեղաբաշխումը պարզելու համար դիմել է լեզվաբանական աշխարհագրության մեթոդներին, հասարակագիտական ուղղության դիրքերից մեկնաբանել երիտքերականների առաջ քաշած հիմնական դրույթները հնչյունական օրենքի, համաբանության, փոխառության վերաբերյալ, սակայն չի սահմանափակվել նշված սկզբունքներով և առաջ է քաշել լեզվի զարգացման ընդհանուր օրենքներ սահմանելու հարցը: Զբաղվել է առանձին հնդեվրոպական լեզուների (հուն., լատ., հին պարսկ., թոխարերեն, գերմ., սլավ. ևն) ուսումնասիրությամբ:

«Հայերենի բարբառային դիրքը» (1896) առաջին հայերենագիտական ուսումնասիրության մեջ Մ., հիմք ընդունելով հայերենի և այլ լեզուների հնչյունական փոփոխությունները, որոշել է հայերենի դիրքը հնդեվրոպական լեզուների շարքում, հայերենը համարել առանձին լեզվաճյուղ, որն իր համակարգով բավական հեռացել է հնդեվրոպական մայր լեզվից: «Դասական հայերենի համեմատական քերականության ուրվագիծ» (1903) աշխատության մեջ քննության է ենթարկել հայերենի քերականությունն ամբողջությամբ, անդրադարձել հայոց լեզվի պատմական զարգացման ընթացքին, նրա առանձնահատկություններին: Զնաբանության հարցերին զուգահեռ քննել է ձևույթների շարահյուսական կիրառությունները («Հետազոտություններ հայերենի համեմատական շարահյուսության վերաբերյալ», 2 հտ., 1968, տես «Memoire de la Societe de linguistique de Paris» ամսագրում) ցեղակից լեզուների համեմատությամբ, այն իր տեսակի մեջ ցարդ միակն է և մեծ ավանդ է հայերենի համեմատական շարահյուսության ուսումնասիրության գործում: Մ. անդրադարձել է հայերենագիտության այլևայլ խնդիրների՝ այբուբենին, ուղղագրությանը, տառադարձությանը, բառաբարդմանը, ստուգաբանությանը, գրել «Հին հայերենի տարրական դասընթաց» (1913, գերմ.) դասագիրքը: Նա հանդես է եկել հայերին հուզող զանազան հարցերի քննությամբ, քննադատել է ցարիզմին (հայկ. դպրոցների փակման կապակցությամբ), Թուրքիայի հայաջինջ քաղաքականությունը:

*Երկ.* Հայագիտական ուսումնասիրություններ, Ե., 1978: Les dialectes indo-européens, 2 éd., P., 1922; La méthode comparative en linguistique historique, Oslo—[e. a.], 1925; Linguistique historique et linguistique générale, 2 éd., t. 1—2, P., 1926—36; Введение в сравнительное изучение индоевропейских языков, М.—Л., 1938; Общеславянский язык, М., 1951.

*Գրկ.* Աղայան Է. Բ., Հայ լեզվաբանության պատմություն, Ե., 1958: *Լ. Հովսեփյան*

**ՄԵՅԵՐ** (Meyer) Էդուարդ (1855—1930), գերմանացի պատմաբան: Հին պատմության պրոֆեսոր Լայպցիգում (1884-ից), Բրեսլաուում (Վրոցլավ, 1885-ից), Հալլեում (1889-ից), Բեռլինում (1902—23-ին): Տարբեր սկզբնաղբյուրների (հնագիտական, վիմագրական, գրական ևն) հիման վրա ուսումնասիրել է Հին Արևելքի (նաև Հայաստանի), Հին Հունաստանի և Հին Հռոմի պատմության հարցերը: Հիմնական աշխատության՝ «Հին ժամանակների պատմության» (հ. 1—5, 1884—1902) մեջ շարադրել է համաշխարհային պատմությունը՝ Արևելքի հին քաղաքակրթությունների առաջացումից մինչև մ. թ. ա. 355-ը (Սիկիլիայում հույների տիրապետության անկումը): Թեև զգալի ուշադրություն է դարձրել տնտ. և սոցիալական պատմությանը, Մ. իր շարադրանքի հիմքում դրել է քաղ. իրադարձություններն ու պետականության պատմությունը՝ գտնելով, որ պետության ձևն է որոշում ժողովրդի ճակատագիրը: Ժողովուրդների զաղթերն ու տեղաշարժերը համարել է պատմական զարգացման կարևոր գործոն (օրինակ, Եգիպտոսի նվաճումը հյուքսոսներից, մ. թ. ա. XII դ. հնդեվրոպական ցեղերի զաղթերը ևն): Մ. հին պատմությունը շարադրել է ցիկլիզմի և մոդեռնիզմի տեսությունների դիրքերից: Հունաստանի պատմության հոմերոսյան ժամանակաշրջանը (մ. թ. ա. XI—IX դդ.) բնորոշել է իբրև հուն. միջնադար, դասական ու հելլենիստական ժամանակաշրջանը (մ. թ. ա. V—I դդ.)՝ կապիտալիզմ, իսկ Հռոմի պատմությամբ ավարտվել է հին աշխարհի կապիտալիստական զարգացումը: Ժխտել է պատմական զարգացման առաջընթաց շարժումը՝ կապիտալիզմը համարելով հասարակության զարգացման բարձրագույն աստիճանը, որի անկումը իբր կհանգեցնի մշակույթի անկման:

*Երկ.* Geschichte des Altertums, Bd 1—5, Stuttgart, 1884—1902.

*Գրկ.* Протасова С. И., История древнего мира в построении Эд. Мейера, «ВДИ», 1938, № 3.

**ՄԵՅԵՐ** (Meyer) Յուլիուս Լոտար (1830—1895), գերմանացի քիմիկոս: Տյուբինգենի համալսարանի պրոֆեսոր (1876), Պետերբուրգի ԳԱ թղթակից անդամ (1890): Առանց տեսական ընդհանրացումների Մ. 1864-ին տվել է 27 քիմ. տարրերի աղյուսակ, որում տարրերը տեղաբաշխված էին ըստ ատոմական կշռի աճի և խմբավորված ըստ արժեքականության: 1870-ին կազմել է քիմ. տարրերի համակարգման ընդհանուր աղյուսակ, որն, ըստ հեղինակի, «էապես նմանվում է Մենդելեևի (1869) պարբերական համակարգին»: Կառուցել է տարրերի ատոմական ծավալների կորերը:

**ՄԵՅԵՐ** (Meyer) Վիկտոր (1848—1897), գերմանացի քիմիկոս: Գյոթինգենի (1885—89) և Հայդելբերգի (1889) համալսարանների պրոֆեսոր: Առաջինն է ստացել (1872) նիտրոմիացություններ և ուսումնասիրել դրանց քիմ. հատկությունները: Քարածխի խեժի բենզոլային ֆրակցիայում հայտնաբերել է (1882) թիոֆեն, հետազոտել դրա և շատ ածանցյալների հատկությունները: Հայտնագործել է ալդեհիդների և կետոնների ռեակցիան հիդրօքսիլամինի հետ և առաջինն ստացել օքսիմներ ևն: Առաջարկել է (1878—80) գոլորշու խտությամբ նյութի մոլեկուլային զանգվածի որոշման մեթոդ:

**ՄԵՅԵՐԲԵՐ** (Meyerbeer) Ջակոմո (իսկական անունը և ազգանունը՝ Յակոբ Լիբման Բ ե ր, Beer, 5.9.1791, Տասդորֆ, Բեռլինի մոտ —2.5.1864, Փարիզ, թաղված է Բեռլինում), կոմպոզիտոր, դիրիժոր: Հրեա բանկիրի որդի: Աշակերտել է Մ. Կլեմենտիին (դաշնամուր), Կ. Ֆ. Ցելտերին և Գ. Ֆոգլերին (կոմպոզիցիա): 1816—24-ին ապրել է Իտալիայում, յուրացրել իտալ. օպերայի սկզբունքները և տարբեր քաղաքներում բեմադրել նոր օպերաներ, որոնցից առավել հասունը՝ «Խաչակիրը


Ջ. Մեյերբեր

Եգիպտոսում» (1824): 1827—42-ին ապրել է Ֆրանսիայում, որտեղ աննախընթաց հաջողություն են գտել նրա «Ռոբերտ Սատանա» (1830, բեմ. 1831) և համաշխարհային հռչակ վայելող «Հուգենոտներ» (1835, բեմ. 1836) օպերաները: 1842—46-ին Բեռլինում վարել է գեներալ-մուզիկ-դիրեկտորի (գլխավոր դիրիժոր) պաշտոնը: 1856-ին վերադարձել է Փարիզ, ուր բեմադրվել են նրա «Մարգարե» (1849), «Պլոյերմելյան ներում» («Դինորահ», 1859), «Աֆրիկուհի» («Վասկո դա Գամա», բեմ. ետմահու, 1885) և այլ օպերաներ: Զարգացնելով «մեծ օպերայի» (տես *Օպերա*) ավանդույթները Մ. լիբրետիստ Է. Սկրիբի հետ ստեղծել է մոնումենտալ ներկայացումներ՝ կոնտրաստային դրամատուրգիայով, մասսայական ճոխ տեսարաններով, շքեղ ձևավորմամբ, որոնց բարդ

սյուժեներում, իբրև կանոն, միահյուսվում են պատմա-սոցիալական և անձնական դրամայի գծեր: Չնայած խոցելի կողմերին (պատմական անցքերի վիճելի մեկնաբանում, ոճի որոշ էկլեկտիկություն, վիրտուոզային և բեմադրական էֆեկտների չարաշահում), Մ-ի երկերը (շուրջ 16 օպերա) վոկալ, անսամբլային, խմբերգային և բալետային համարների բազմազան օգտագործման, մեղեդիկայի ու հարմոնիայի արտահայտչականության և վառ գործիքավորման շնորհիվ զգալիորեն հարստացրին XIX դ. ռոմանտիկական օպերան: Երևանի օպերայի և բալետի թատրոնում 1943-ին բեմադրվել է «Հուգենոտներ» օպերան:

*Գրկ.* Кремлев Ю. А., Джакомо Мейербер, [Л.], 1936; Соллертинский И. И., Джакомо Мейербер, 2 изд., М., 1962; Cook I. F., Meyerbeer, Philadelphia, 1929. *Ա. Բուդաղյան*

**ՄԵՅԵՐԽՈԼԴ** Վսեվոլոդ (իսկական անունը՝ Կարլ-Թեոդոր-Կազիմիր) Էմիլևիչ [28.1(9.2).1874, Պենզա —2.2.1940, Մոսկվա], սովետական ռեժիսոր, դերասան, հասարակական գործիչ: Հանրապետության ժող. արտիստ (1923): ՍՄԿԿ անդամ 1918-ից: Ծնվել է գերմանացի խոշոր ձեռնարկատիրոջ ընտանիքում: Սովորել է նախ Մոսկվայի համալսարանի իրավաբանական բաժնում (1895–96), ապա՝ Վ. Ի. Նեմիրովիչ-Դանչենկոյի ղեկավարած Մոսկվայի ֆիլհարմոնիկ ընկերության երաժշտա-դրամատիկական ուսումնարանում: 1898-ին Նեմիրովիչ-Դանչենկոն հրավիրել է ՄԳԹ-ի նորաստեղծ խումբ, ուր Մ. աշխատել է մինչև 1902-ը: Աչքի է ընկել սուր բնութագրային դերերով (Տրեպլյով, Տուզենբախ՝ Չեխովի «Ճայ», «Երեք քույր», Վասիլի Շույսկի, Իվան Ահեղ՝ Ա. Տոլստոյի «Ֆյոդոր Իոաննովիչ արքան», «Իվան Ահեղի մահը», Պյոտր՝ Մ. Գորկու «Քաղքենիներ»): 1903—06-ին իր կազմակերպած «Նոր դրամա» խմբով հանդես է եկել նաև Թիֆլիսում ու Բաքվում, ուր «Կատյուշա Մասլովա» բեմադրությամբ առաջին անգամ արժանացել է հայ մամուլի բարձր գնահատականին: 1905-ին Հաուպտմանի «Մենակ մարդիկ» պիեսի մի ներկայացում է տվել հօգուտ հայկական կոտորածից տուժածների: Այս շրջանում էլ ձևավորվել է Մ-ի գեղարվեստական ծրագիրը՝ թելադրված սիմվոլիզմի պոետիկայով: 1906—07-ին գլխավորել է Պետերբուրգի Վ. Կոմիսարժևսկայայի թատրոնը, ուր նկարիչ Վ. Սուրենյանցի համագործակցությամբ բեմադրել է Հ. Հեյբերգի «Սիրո ողբերգություն» դրաման: Նախահեղափոխական շրջանի լավագույն բեմադրությունները կապված են (1908-ից) Պետերբուրգի Ալեքսանդրյան թատրոնի (Մոլիերի «Դոն Ժուան», Ա. Օստրովսկու «Ամպրոպ», Լերմոնտովի «Դիմակահանդես»), ինչպես և (1914-ից) Բորոդինսկու ստուդիայի (Ա. Բլոկի «Անծանոթուհին», «Բալագանչիկ») հետ: Սովետական տարիներին կյանքի է կոչել «Թատերական հոկտեմբերի» ծրագիրը՝ իր իսկ կազմակերպված թատրոնում (ТИМ, Մեյերխոլդի անվ. թատրոն, 1923—38), ստեղծելով վառ-հանդիսանքային և քաղաքական մեծ



Վ. Է. Մեյերխոլդ

շնչի ներկայացումներ՝ Մայակովսկու «Միստերիա բուֆը», «Փայտոջիլը», «Բաղնիքը», Վերհառնի «Արշալույսները», Վիշնևսկու «Վերջին վճռականը», ռուս դասականներից՝ Ա. Օստրովսկու «Անտառը», Գոգոլի «Ռևիզոր»-ը, Ա. Գրիբոյեդովի «Վայ խելքին» («Խելքից պատուհաս»): Թիֆլիսի հյուրախաղերի (1927) ժամանակ Մ-ի արվեստը բարձր գնահատելով, հայկ. մամուլում Հ. Սուրխաթյանը նշել է. «Մեյեր-



Տեսարան Վ. Մայակովսկու «Բաղնիք» պիեսի ներկայացումից (1930, ռեժ. Վ. Է. Մեյերխոլդ)

խոլդյան թատրոնում ռեժիսորի դերը գրեթե հավասար է դրամատուրգի դերին»: Մ. մեծ հետք է թողել արվեստի համաշխարհային գործիչներից Ս. Էյզենշտեյնի, Ի. Բերգմանի, Բ. Բրեխտի, Է. Պիսկատորի, Պ. Բրուկի ստեղծագործության վրա: «Մեյերխոլդը տվել է ապագա արվեստի արմատները, ապագան էլ կհատուցի նրան». այսպես է գնահատել Վախթանգովը Մ-ի արվեստը: Հայազգի գործիչներից Մ. համագործակցել է նաև Գ. Յակուլովի, Վ. Բեբուտովի հետ: Միաժամանակ Մ-ի ուժեղ ազդեցության տակ են եղել հայ ռեժիսորներ Ա. Բուրջալյանը, Վ. Աճեմյանը, Ա. Գուլակյանը, Տ. Շամիրխանյանը, Թ. Սարյանը:

*Երկ.* Статьи. Письма. Речи. Беседы, ч. 1—2, М., 1968.

*Գրկ.* Տերյան Վ., Պայմանական թատրոն, Երկ. ժող., հ. 3, Ե., 1975: Волков Н., Мейерхольд, т. 1—2, М.—Л. 1929; Встречи с Мейерхольдом, Сб. воспоминаний, М., 1967; Рудницкий К. Л., Режиссер Мейерхольд, [М., 1969]; Творческое наследие В. Э. Мейерхольда, М., 1978; Гладков А. К., Театр: Воспоминания и размышления, М., 1980. *Լ. Խալաթյան*

**ՄԵՅՁԻ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆ**, Մեյձի իսին [Մեյձի բարենորոգում, Մեյձի անվանվում է կայսր Մուցուհիտոյի կառավարման ժամանակաշրջանը (1867—1912)], լայն իմաստով՝ հասարակական-տնտեսական վերափոխումներ Ճապոնիայում (XIX դ. 2-րդ կես), նեղ իմաստով՝ չավարտված բուրժ. հեղափոխություն: XIX դ. կեսին Ճապոնիայում ֆեոդալական հասարակարգի ճգնաժամի պայմաններում կատարված հեղափոխության (1867—68) հետևանքով վերացվեց սյոգունների (ռազմաֆեոդալական կառավարիչների) տիրապետությունը, իրականացվեցին բուրժ. վերափոխումներ (վերացվեց ֆեոդալական դասային համակարգը, հռչակվեց հողի ազատ առուտուր, ֆեոդալական բազմաթիվ հարկերը փոխարինվեցին միասնական դրամական հարկով հօգուտ պետության ևն), ձևավորվեց բուրժուա-կալվածատիրական կենտրոնացված պետություն:

**ՄԵՅՈԶ** (< հուն. μείωσις — նվազում, պակասում), ռեդուկցիոն բաժանում, սեռական բջիջների բաժանման ձև, որի հետևանքով տվյալ օրգանիզմի բջիջների քրոմոսոմների թիվը նվազում է երկու անգամ, և մեկ դիպլոիդ բջջից առաջանում է չորս հապլոիդ բջիջ: Քրոմոսոմների դիպլոիդ թիվը վերականգնվում է *բեղմնավորման* միջոցով: Մ. ժառանգականության և փոփոխականության կարևոր մեխանիզմներից է: Օրգանիզմների առանձին խմբերում Մ. տեղի է ունենում զարգացման տարբեր աստիճաններում և բաղկացած է երկու իրար հաջորդող բաժանումներից: Նախքան առաջին բաժանումը բջջում դեզօքսիռիբոնուկլեինաթթվի (ԴՆԹ) քանակը կրկնապատկվում է: Ինչպես *միտոզը*, այնպես էլ մեյոտիկ առաջին բաժանումն անցնում է պրո-, մետա-, անա- և տելոֆազի փուլերով: Վերջին 3 փուլերն արագ հաջորդում են միմյանց, իսկ պրոֆազը, ի հակադրություն միտոզի պրոֆազի, բարդ և երկարատև է (մարդու մոտ 22,5, շուշանի՝ 8—10 օր): Այն բաժանվում է 5 փուլի. լեպտոտենում՝ քրոմոսոմները առանձին թելիկների տեսքով են, զիգոտենում՝ քրոմոսոմները հաստպնում են, սկսվում է *հարակցումը*, հոմոլոգ քրոմոսոմները փոխադարձաբար ձգվում են և շարվում դեմ դիմաց, պախիտենում՝ հոմոլոգ քրոմոսոմները կազմում են զույգեր՝ բիվալենտներ, որոնց քանակը հավասար է քրոմոսոմների հապլոիդ թվին, կրոսինգովեր, դիպլոտենում՝ հոմոլոգ քրոմոսոմները սկսում են վանվել իրարից, բայց խիազմներով մնում են իրար հետ կապված (2—3 կետում): Դիակինեզ՝ քրոմոսոմներն առավել հաստ ու կարճ են և շարունակում են վանվել միմյանցից: Դրանով պրոֆազն ավարտվում է. արագ իրար են հաջորդում առաջին բաժանման հաջորդ փուլերը: Հետևում է կարճ ինտերկինեզը, որը համապատասխանում է միտոզի ինտերֆազին, առանց ԴՆԹ-ի կրկնապատկման: Մ-ի երկրորդ բաժանումը քրոմոսոմների հապլոիդ հավաքով բջիջների միտոզ է: Մեյոտիկ բաժանման հետևանքով առաջանում են չորս հապլոիդ գամետներ (սպերմատոզենեզ) կամ մեկ հապլոիդ ձվաբջիջ և 1—3 բևեռային մարմնիկներ: Մ-ի այս ընդհանուր սխեման ունի որոշ բացառություններ: Մ. կարևոր դեր է կատարում ժառանգական ինֆորմացիայի բաշխման և տեսակային հատկանիշների պահպանման գործում:

**ՄԵՅՍԵԼ** Մաքսիմ Նիկոլաևիչ (ծն. 1901) սովետական մանրէաբան և բջջաբան: ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ (1960): ՍՄԿԿ

անդամ 1961-ից: 1926-ին ավարտել է Լենինգրադի I բժշկ. ինստ-ը: 1934-ից աշխատել է ՍՍՀՄ ԳԱ մանրէաբանության ինստ-ում (1952-ից բաժնի վարիչ), 1959-ից միաժամանակ՝ ՍՍՀՄ ԳԱ մոլեկուլային կենսաբանության ինստ-ի լաբորատորիայի վարիչ, 1946-ից՝ նաև Մոսկվայի պետ. համալսարանում (1953-ից՝ պրոֆեսոր): Գիտական աշխատանքները վերաբերում են միկրոօրգանիզմների ֆունկցիոնալ մորֆոլոգիային և ֆիզիոլոգիական բջջաբանությանը, ռադիոկենսաբանությանը, նավթից սպիտակուցների միկրոկենսաբանական սինթեզին ևն: 1928-ին հայտնաբերել է միկրոօրգանիզմների քիմ. մուտագենեզի երևույթը: 1971-ից Մանրէաբանության համամիութենական ընկերության նախագահն է: ՍՍՀՄ պետ. մրցանակի դափնեկիր է (1971):

**ՄԵՅՍՈՆԻԵ**, Մ ե ս ո ն ի ե (Meissonier), Էռնեստ(1815—1891), ֆրանսիացի նկարիչ: Սովորել է Փարիզում, Լ. Կոնիեի մոտ: Հայտնի է անցած դարաշրջանների կենցաղը (հիմնականում XVII—XVIII դդ. Ֆրանսիայի) և մարտի տեսարաններ պատկերող ոչ մեծ ժանրային նկարներով («Նապոլեոն III-ը Սոլֆերինոյի մոտ», 1863, Լուվր, Փարիզ, «Ֆրիդլանդ, 1807», 1875, Մետրոպոլիտեն թանգարան, Նյու Յորք): Երևույթները գերազանցապես մակերեսորեն պատկերող Մ-ի նկարները ուշագրավ են հետաքրքիր սյուժեով, պատմական միջավայրի հարազատ պատկերումով: Ժամանակակից թեմայով գործերից մեկը նվիրված է 1848-ի հունիսյան դեպքերին («Բարիկադ», 1848, Լուվր, Փարիզ): Եղել է Նապոլեոն III-ի սիրելի նկարիչն ու արվեստի հարցերով գլխավոր խորհրդատուն:

**ՄԵՆ** (Maine), նահանգ ԱՄՆ-ի Ատլանտյան ափի հյուսիսում, Նոր Անգլիայում: Տարածությունը 86 հզ. *կմ*² է, բնակչությունը՝ 1,1 մլն (50,8%-ը՝ քաղաքային, 1974): Վարչական կենտրոնը Օգաստան է, խոշորագույն քաղաքն ու նավահանգիստը՝ Պորտլենդը: Տարածքի մեծ մասն զբաղեցնում են Ապալաչների լեռնաճյուղերը (բարձրությունը՝ մինչև 1291 *մ*): Կլիման բարեխառն է, խոնավ: Նահանգի տարածքի ավելի քան 1/2-ը անտառածածկ է: Տնտեսության կարևոր ճյուղը գյուղատնտեսությունն է, որի ապրանքային արտադրանքի 65%-ը տալիս է անասնապահությունը (1971): Կարտոֆիլի բերքահավաքով Մ. ԱՄՆ-ում զբավում է I տեղը: Կա փայտամթերում, փայտամշակման, թղթի-թաղանթանյութի, կաշվի-կոշիկի, տեքստիլ, կարի արդյունաբերություն, տեքստիլ և կարի մեքենաների արտադրություն, նավաշինություն: Առափնյա շրջաններում զբաղվում են ձկնորսությամբ:

**ՄԵՆ ԴԸ ԲԻՐԱՆ** (Maine de Biran) Մարի Ֆրանսուա Պիեռ (1766—1824), ֆրանսիացի վոլյունտարիստ փիլիսոփա, քաղաքական գործիչ, միապետական (ռոյալիստ): Փիլ. հայացքները ձևավորվել են ֆրանս. լուսավորության և մատերիալիզմի դեմ մղած պայքարում: Մ. դը Բ. հիմնականում զբաղվել է ճանաչողության տեսության հարցերով: Քննադատել է սենսուալիզմը, հիմնավորել ինքնադիտման հոգեբանությունը, զարգացրել է քրիստոնեական մետաֆիզիկայի գաղափարները:

Մ. դը Բ-ի հայացքները ազդել են Ֆրանսիայում իդեալիստական փիլիսոփայության զարգացման վրա, օգտագործվել *պերսոնալիզմի* և *էկզիստենցիալիզմի* փիլիսոփայության մեջ:

**ՄԵՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ**, գիտական աշխատություն, որտեղ առավել լիակատարությամբ ուսումնասիրվում է որոշակի թեմա: Մ-յան մեջ ընդհանրացվում և վերլուծվում է տվյալ հարցին վերաբերող գրականությունը, առաջ են քաշվում գիտության զարգացմանը նպաստող նոր վարկածներ ու լուծումներ: Սովորաբար հրատարակվում է առանձին գրքով: Մ. ունենում է մատենագիտական ընդարձակ ցուցակ, ծանոթագրություններ ևն:

**ՄԵՆԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ**, մ ո ն ո լ ո գ (*մոնո*... և հուն. λόγος — խոսք), գեղարվեստական երկի մեջ հերոսի ինքնարտահայտման ձև (ի տարբերություն *երկխոսության*՝ դիալոգի), երբ նա համեմատաբար լայն ընդգրկումով բացահայտում է իր հոգեվիճակը, շրջապատող իրադրությունը: Մ. բնորոշ է թատերգությանը, քնարերգությանը, արձակին: Առավել հատկանշական է դրամատիկական գործերին (Վ. Շեքսպիրի «Համլետ»-ի «Լինել, թե չլինել» հատվածը): Մ-յան բնույթ ունեն քնարական շատ բանաստեղծություններ (Պ. Դուրյան, «Տրտունջք», Ս. Եսենին, «Սև մարդը» ևն):

**ՄԵՆԱԿԱՏԱՐ**, մեկ ձայնի կամ մեկ նվագարանի համար գրված ստեղծագործություն, օպերայում՝ դերերգեր, բալետում՝ դերապարեր կատարող արտիստ:

**ՄԵՆԱՄ ՉԱՈ ՊՐԱՅԱ**, Մ ե ն ա մ, գետ Հնդկաչին թերակղզում (Թաիլանդում): Երկարությունը մոտ 1200 *կմ* է, Պինգ վտակի ակունքներից՝ մոտ 1500 *կմ*, ավազանը՝ մոտ 150 հզ. *կմ*²: Սկիզբ է առնում Կհունտհան լեռնաշղթայից, թափվում Սիամի ծոց (Հարավ-Չինական ծով): Սնումը անձրևային է, ռեժիմը՝ մուսսոնային: Միջին ծախսը ստորին հոսանքում մոտ 2700 *մ*³/*վրկ* է: Ջրերը օգտագործվում են ոռոգման նպատակով: Նավարկելի է գետաբերանից սկսած 400 *կմ*, վարարումների ժամանակ՝ 750 *կմ*: Դելտայում են Բանգկոկ և Այուտահայա քաղաքները:

**ՄԵՆԱՄՈՒՍՆՈՒԹՅՈՒՆ**, մ ո ն ո գ ա մ ի ա (*մոնո*... և հուն. γάμος — ամուսնություն), ամուսնության և ընտանիքի պատմական ձև: Նախնադարյան հասարակության քայքայման շրջանում առաջանալով *զույգամուսնությունից*, Մ. այնուհետև դարձավ *ամուսնության* տիրապետող ձևը:

**ՄԵՆԱՄՈՒՍՆՈՒԹՅՈՒՆ** կ ե ն դ ա ն ի ն ե ր ի, սեռերի հարաբերություն, երբ արուն զուգավորվում է միևնույն էգի հետ և սովորաբար մասնակցում սերնդի խնամքին: Մ. բնորոշ է թռչունների մեծամասնությանը, ընդ որում կարապները, արագիլները, արծիվները, անգղները զույգեր են կազմում մի քանի տարով, երբեմն՝ ամբողջ կյանքում, սագերը, բադերը՝ միայն մեկ սեզոնի ընթացքում: Կաթնասուններից կապիկների զույգերը պահպանվում են մի քանի տարի, գայլերի, աղվեսների, զորշուկների, կուղբերի զույգերը՝ մեկ սեզոն: Տես նաև *Բազմամուսնություն*:

**ՄԵՆԱՆԴՐՈՍ** (Μένανδρος, մ. թ. ա. մոտ 343 —մ. թ. ա. մոտ 291), հույն դրամատուրգ, նոր ատտիկյան կատակերգության ստեղծողներից: Պատկանել է Աթենքի ունևոր վերնախավին: Պատկերել է առօրյա կյանքը, գլխավորապես՝ ընտանեկան վեճերը: Մ-ի հումանիզմը դրսևորվել է կանանց, երեխաների իրավունքի պաշտպանության, կենցաղային այլանդակ երևույթների մերկացման, ստրուկների հանդեպ կարեկցանքի մեջ: Անտիկ քննադատությունը բարձր է գնահատել Մ-ին որպես ոճաբանի: Նոր ատտիկյան կատակերգության ազդեցությունը հռոմ. և, նրա միջոցով նաև եվրոպական, դրամատուրգիայի վրա՝ առաջին հերթին կապված է Մ-ի անվան հետ:

**ՄԵՆԱՆԴՐՈՍ ՊՐՈՏԵԿՏՈՐ** (Μένανδρος Προτήκτωρ) (ծն. և մահ. թթ. անհտ.), VI դ. բյուզանդական ժամանակագիր: Եղել է փաստաբան, ծառայել արքունիքում: VI դ. վերջին գրած «Պատմություն» երկը, որը պահպանվել է Կոստանդին Ծիրանածինի ծաղկաքաղերում, ընդգրկում է 558—582-ի ժամանակաշրջանը: Օգտագործել է դիվանական փաստաթղթեր, որով նրա գործը դարձել է վաղ բյուզանդական ժամանակաշրջանի արժեքավոր աղբյուրներից: Կարևոր տեղեկություններ է հաղորդում Բյուզանդիայի և Պարսկաստանի դիվանագիտական փոխհարաբերություններում Հայաստանի և հայերի դերի, 562-ի բյուզանդա-պարսկական հիսնամյա հաշտության պայմանագրի, Սասանյանների դեմ 571-ին հայերի ապստամբության, հայոց իշխանների՝ Բյուզանդիայում ապաստանելու, Տիբերիոս կայսեր օրոք (578—582) բյուզանդական զորքերի Աղվանք և Հայաստան կատարած արշավանքների մասին ևն:

*Երկ.* Византийские историки Дексипп, Эвнапий, Олимпиодор, Малх, Петр Патриций, Менандр, Кандид, Ноннос и Феофан Византиец, СПБ, 1860, с. 313—470.

*Հ. Բարթիկյան*

**ՄԵՆԱՇՆՈՐՀԱՅԻՆ ԳԻՆ**, ապրանքի *շուկայական գնի* առանձնահատուկ տեսակ, որ սահմանում են մոնոպոլիաներն ապրանքի *արժեքից* կամ *արտադրության գնից* բարձր կամ ցածր և ստանում *մենաշնորհային շահույթ*: Մինչմոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում Մ. գ. սահմանվում էր սահմանափակ քանակով արտադրվող գյուղատնտ. և արդ. որոշ ապրանքների համար՝ բնական կամ արհեստական (պատահական) մենաշնորհի ազդեցությամբ: Այն գերիշխող դարձավ իմպերիալիզմի փուլում, երբ տիրապետություն հաստատեցին մոնոպոլիաները: Դրանք մենաշնորհային բարձր (և՛ արտադրության գնից, և՛ արժեքից) գներ են սահմանում սեփական ձեռնարկությունների արտադրանքի և մենաշնորհային ցածր (հասարակական արժեքից) գներ՝ իրենց երկրների մանր ու միջակ արտադրողներից, ինչպես նաև զարգացող պետություններից գնվող ապրանքների համար: Մենաշնորհային ցածր գին է նաև աշխատուժի գինը, քանի որ կապիտալիստները սովորաբար ձգտում են աշխատավարձն իջեցնել աշխատուժի արժեքից: Մոնոպոլացված ձեռնարկությունների ար-

տադրանքի Մ. գ. արտադրության ծախքերի, միջին շահույթի և մենաշնորհային շահույթի գումարն է: Արտադրության գնից դրա շեղման չափը կախված է մոնոպոլիաների կայունությունից ու հզորությունից: Մենաշնորհային դիրք ունենալով այս կամ այն արդյունքի արտադրության և վաճառահանման ոլորտում, խոշոր մոնոպոլիաները հնարավորություն են ստանում համաձայնության գալ և սահմանել մենաշնորհային բարձր գներ: Մ. գ-ի բարձր մակարդակի վրա ազդում են նույն և տարբեր ճյուղերի մոնոպոլիաների, չմոնոպոլացված ֆիրմաների, արտասահմանյան կապիտալի մրցապայքարը, առաջարկի գերազանցումը պահանջարկին: Միջմոնոպոլիստական մրցապայքարը դնում է Մ. գ-երի որոշակի սահմաններ, բայց չի վերացնում մենաշնորհային շահույթը և Մ. գ., այլ գլխավորապես ազդում է մոնոպոլիաների միջև մենաշնորհային շահույթի բաշխման վրա: Կողմնակի ֆիրմաների դեմ մղվող մրցապայքարում մոնոպոլիաները մանևրում են գներով, նրանց զրկում հումքի աղբյուրներից, տրանսպորտից, վարկից, պատվերներից ևն: Արտասահմանյան մրցակիցների դեմ օգտագործում են ապրանքների ներմուծումն արգելակող տարբեր միջոցներ: Պահանջարկը մեծացնելու նպատակով մոնոպոլիաները սահմանափակում են ապրանքների արտադրությունը և առաջարկը, արգելակում տեխ. առաջընթացը, ապրանքներն արտահանում ցածր գներով ևն: Գնագոյացման նոր կարևոր գործոն է հօգուտ մոնոպոլիաների պետության տնտ. քաղաքականությունը: Քանի որ մոնոպոլիաները որոշակի չափով թելադրում են գները, ուստի շուկայում գների ազատ խաղ չկա: Մ. գ-ի շարժման հիմքը նույնպես ապրանքային արժեքների շարժումն է: Հետևաբար, *արժեքի օրենքը* գործում է, բայց վերափոխված ձևով: Տեղի է ունենում ամբողջական *հավելյալ արժեքի* վերաբաշխում հօգուտ մոնոպոլիաների, նրանց հարստացում ի հաշիվ չմոնոպոլացված արտադրողների, աշխատավոր զանգվածների, ինչպես նաև զարգացող երկրների: Այսպիսով, Մ. գ-երը սրում են կապիտալիզմի տնտ., սոցիալական հակասությունները, և ընդհանուր պայքար է սկսվում մոնոպոլիստական կապիտալիզմի դեմ:

*Գրկ.* Մ ա ր ք ս Կ., Կապիտալ, հ. 1, Ե., 1954, հ. 3, մաս 1, Ե., 1947: Маркс К. и Энгельс Ф., Соч., т. 23—25, ч. 1—2; Նույնի, Теории прибавочной стоимости (IV том «Капитала»), նույն տեղում, т. 26, ч. 1—2; Լենին Վ. Ի., Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա, Երկ., հ. 22: Аганбегян А., Вопросы теории монопольной цены, М., 1961; Манцев М., Монопольная прибыль и монопольная цена, М., 1963; Козлов Г. А., Действие закона стоимости в условиях современного капитализма, М., 1964.

*Վ. Ներկարարյան*

**ՄԵՆԱՇՆՈՐՀԱՅԻՆ ՇԱՀՈՒՅԹ**, եկամտի ձև, որ յուրացնում են մենաշնորհային պայմաններում գտնվող կապիտալիստները: Հետևանք է ոչ միայն բանվոր դասակարգի շահագործման, այլև գյուղացիների, արհեստավորների, ազատ մասնագիտության մարդկանց, մանր և միջակ բուրժուազիայի եկամուտները հօգուտ մոնոպոլիաների վերաբաշխման, զարգացող երկրների ժողովուրդների շահագործման: Մ. շ-ի իրացման ձևը *մենաշնորհային գինն* է: Մինչմոնոպոլիստական կապիտալիզմի ժամանակ Մ. շ. ունեցել է պատահական բնույթ, իմպերիալիզմի փուլում դարձել է մշտական և *շահույթի* տիրապետող ձև: Կապիտալիզմի ազատ մրցապայքարի զարգացմանը զուգընթաց Մ. շ. տարբեր ձևեր է ընդունում:

Ա ն ո ւ տ ր ա կ ա ն Մ. շ. գոյացել է մանր ապրանքարտադրողների հավելյալ արդյունքն անհամարժեք փոխանակությամբ, ինչպես նաև բնակչության այլ շերտերի եկամուտների մի մասը յուրացնելու միջոցով: Բնորոշ էր XVII—XVIII դդ.:

Ա ր դ յ ո ւ ն ա բ ե ր ա կ ա ն Մ. շ. առաջացել է ազատ մրցապայքարի պայմաններում և կապիտալիստական շահույթի տիրապետող ձև դարձել իմպերիալիզմի փուլում: Հիմնական աղբյուրը հավելյալ արժեքն է: Տարբերվում է բնական և արհեստական Մ. շ.: Բնականն առաջանում է կապիտալի կողմից արտադրողական ուժերի հազվագյուտ և ազատ չվերարտադրվող տարրերի (օրինակ, լավորակ, հազվագյուտ օգտակար հանածոներով հարուստ հողերի) յուրացման և տնտ. օգտագործման շնորհիվ (տես *Հողային ռենտա*): Որոշ արդյունքների արտադրության բնական հնարավորությունների սահմանափակվածությունն առաջացնում է կայուն մենաշնորհային գին, որը միջինից բարձր շահույթ է պարունակում: Արհեստական Մ. շ. առաջանում է այս կամ այն արդյունքի արտադրության և վաճառահանման շուկայի մոնոպոլացման շնորհիվ: Կապիտալիզմի առաջընթացի պրոցեսում այն ավելի զարգացած ձևեր է ընդունում. պատահական, կայուն (ծավալուն), ապա՝ համընդհանուր:

Պատահական Մ. շ., որ գերազանցում է շահույթի միջին մակարդակը և ունի ժամանակավոր բնույթ, գոյանում է պահանջարկի ու առաջարկի պատահական բարենպաստ հարաբերակցության, ինչպես նաև արտադրանքի որոշ տեսակների, տվյալ ճյուղի լավագույն տեխնիկայի, տեխնոլոգիայի կամ աշխատուժի նկատմամբ պատահական առաջացած մենաշնորհի հետևանքով:

Մ. շ. կայուն (ծավալուն) ձև է ընդունում XIX դ. վերջին — XX դ. սկզբին, երբ կապիտալի և արտադրության համակենտրոնացման հիման վրա կայունանում է մենաշնորհը ապրանքների որոշ տեսակների արտադրության և իրացման, առանձին ճյուղերում լավագույն տեխնիկայի, տեխնոլոգիայի և աշխատուժի նկատմամբ: Խոշոր մոնոպոլիաները, կենտրոնացնելով այս կամ այն արդյունքի արտադրության և վաճառքի զգալի բաժինը, դրանց համար սահմանում են մենաշնորհային գին և ստանում մենաշնորհային բարձր շահույթ: Մ. շ. ընդգրկում է լրացուցիչ կամ ավելցուկային և մենաշնորհային բարձր շահույթ: Բացի արդ. մոնոպոլիաների ստացած բարձր շահույթից մոնոպոլիստական բուրժուազիան բարձր շահույթ է ստանում (էմիսիոն, հիմնադրական) նաև ֆինանսական տարբեր գործառնությունների միջոցով: Մ. շ. հիմք է ստեղծում *ֆինանսական կապիտալ* շահույթի համար:

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի և գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում Մ. շ. վերածվում է համընդհանուր, տիրապետող ձևի: Այն սրում է կապիտալիզմի տնտ. և սոցիալական հակասությունները և դառնում նրա անխուսափելի կործանման պատճառներից:

*Գրկ.* Մ ա ր ք ս Կ., Կապիտալ, հ. 3, մաս 1, Ե., 1947, մաս 2, Ե., 1949: Լ ե ն ի ն Վ. Ի., Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա, Երկ., հ. 22: Выгодский С. Л., Современный капитализм, М., 1969; Политическая экономия современного монополистического капитализма, М., 1970.

*Վ. Ներկարարյան*

**ՄԵՆԱՇՆՈՐՀԱՅԻՆ ՌԵՆՏԱ**, կապիտալիստական *հողային ռենտայի* ձև, ստացվում է որոշ արտադրատեսակներ իրենց արժեքից բարձր՝ *մենաշնորհային գնով* իրացնելիս: Գյուղատնտեսության մեջ Մ. ռ. առաջանում է այնպիսի հողակտորներում, ուր մշակվում են հազվագյուտ կուլտուրաներ (խաղողի, թեյի, ծխախոտի հատուկ սորտեր ևն), արդյունահանող արդյունաբերության մեջ՝ հազվագյուտ մետաղներ հայթայթելիս և վաճառելիս: Քանի որ հազվագյուտ ապրանքների արտադրության առանձնապես նպաստավոր պայմաններ ունեցող հողակտորները սահմանափակ են, իսկ այդ ապրանքների պահանջարկը մեծ է, ուստի հնարավորություն է առաջանում ավելի կամ պակաս տևական ժամանակաընթացքում շուկայում դրանք վաճառել իրենց արժեքից բարձր գներով: Նման դեպքերում հողի վարձակալ-կապիտալիստը հողասեփականատիրոջը տալիս է բարձր վարձավճար, որի հիմքը Մ. ռ. է: Վերջինի աղբյուրը *հավելյալ արժեքի* մի մասն է, որ ստեղծվում է վարձու աշխատանքով և վերաբաշխման հետևանքով յուրացվում հողասեփականատիրոջ կողմից:

**ՄԵՆԱՊԱՐ**, թ ա ք պ ա ր, թ և խ ա ղ, կովկասյան ու հայկական ժողովրդական պարի տեսակ, որ կատարվում է մեկ մարդու կողմից: Հատուկ շեշտվում են թևերի շարժումները: Կան տղամարդկանց ու կանանց Մ-եր: Տարբերվում են ծանր (դանդաղ) և թեթև (արագ, թռիչքներով) Մ-եր: Հիմնական պարաքայլը ոտ փոխելն է (chassé), աջ ու ձախ արվող քայլերը: Միզանսցենը մեծ ու փոքր շրջաններն ու կիսաշրջաններն են: Հնում, հիմնականում, հետապնդել է ծիսական նպատակներ:

*Ժ. Խաչատրյան*

**ՄԵՆԱՍՏԱՆ**, վ ա ն ք, մ ե ն ա ր ա ն ք, ե ղ բ ա յ ր ա ն ո ց, ուխտ, այլաբանորեն՝ փ ա ր ա խ, ք ա վ ա ր ա ն, միասնական կենցաղով (կանոնադրությամբ) ապրող, բնակելի ու կրոնական շինություններ, ինչպես նաև այլ սեփականություն ունեցող վանականների համայնք: Հնագույն Մ-ներն առաջացել են մ. թ. ա. I հազարամյակի 1-ին կեսին՝ բուդդայական կրոնում (Հնդկաստան): Սկզբում դրանք եղել են թափառական ճգնավորների համայնքներ, որոնք խմբվել են ապաստարաններում (հաճախ՝ անձավներում): Կալվածներ ձեռք բերելու, նվիրատվությունների միջոցով նրանք աստի-

ճանաքար հարստացել և դարձել են իշխող կարգերի գաղափարական հենարան: Այնուհետև բուդդայական Մ-ներ են հիմնվել Բիրմայում, Թաիլանդում (II—III դդ.), Վիետնամում, Չինաստանում (IV դ.), Կորեայում, Ճապոնիայում, Ինդոնեզիայում (VI—VIII դդ.): III—IV դդ. քրիստոնեական Մ-ները սկզբնապես ձևավորվել են որպես անապատականների կամ ճգնավորների բնակավայրեր (Եգիպտոս, Ասորիք, Պաղեստին, Հռոմեական կայսրություն):

Հայաստանում Մ-ները հիմնականում առաջացել են քրիստոնեությունը պետ. կրոն հռչակելուց (301) հետո՝ Գրիգոր Ա Պարթևի (Լուսավորիչ) և նրա հաջորդների նախաձեռնությամբ: Ըստ հայ պատմիչների, Հայոց կաթողիկոս Ներսես Ա Մեծը IV դ. կեսին հիմնել է 1040 Մ., որոնց թիվը հետագա դարերում բազմապատկվել է: Մ. գլխավորել է վանահայրը: Հայաստանում Մ-ներն առաջնորդվել են Գրիգոր Ա Պարթևի մշակած կանոնադրությամբ, որը հետագայում փոփոխվել ու լրացվել է: Տնտ. առումով Մ-ները եղել են ինքնասպասարկող մարմիններ: Եթե առաջին Մ-ները ստեղծվել են հավասարության հիմունքով, ապա, ֆեոդալիզմի զարգացմանը զուգընթաց, դրանց ներսում կատարվել է շերտավորում, վանականները բաժանվել են կարգերի՝ ըստ իրենց ֆունկցիայի, հասարակական դիրքի: Մ-ների վերնախավը ձուլվել է տիրապետող դասակարգին: Իշխանության աջակցությամբ Մ-ները, ձեռք բերելով զանազան արտոնություններ (ապահարկություն, դատական, վարչական ինքնավարություն ևն), հողային ընդարձակ տարածություններ, գյուղեր, ագարակներ, դարձել են խոշոր կալվածատիրական տնտեսություններ, որոնցում ֆիզիկական աշխատանքը դրվել է ենթակա գյուղացիների վրա: Զարգացած միջնադարում Մ-ները մեծամասամբ եղել են երկրագործական և արհեստագործական, իսկ տարանցիկ մայրուղիներին մոտիկները՝ առևտրական կենտրոններ: Կաթոլիկ Մ-ների հիման վրա առաջացել են վանական օրդեններ, որոնցից շատերը միավորվել են *միաբանություններում*: Խաչակրաց արշավանքների ժամանակ (XII—XIII դդ.) կազմավորված հոգևոր-ասպետական օրդեններն օժանդակել և սպասարկել են խաչակիրներին: Նոր երկրներ զավթելու և նրանց ժողովուրդներին պապությանը հպատակեցնելու նպատակով կաթոլիկ Մ-ներից զանազան երկրներ են ուղարկվել քրիստոնեական քարոզիչներ՝ միսիոներներ (տես *Միսիոներություն*): Մ-ները եղել են նաև ազանդավորական շարժումների դեմ պայքարի կենտրոններ:

Վաղ միջնադարում Մ-ները նպաստել են կրթության տարածմանը, գիտության զարգացմանը, նրանց կից գործել են դպրոցներ, գրչության արվեստանոցներ: Սակայն մշակույթի հետագա զարգացման և գիտությունը աստվածաբանության կապանքներից ազատագրվելու ճանապարհին Մ-ները դարձել են գիտական մտքի ու առաջավոր գաղափարների դեմ պայքարի կենտրոններ: *Ռեֆորմացիայի* դարաշրջանում (XVI դ.) Մ-ներն առժամանակ ապրել են տնտ. և քաղ. անկում: Սակայն հակառեֆորմացիայի ժամանակաշրջանում (XVI դ. վերջ — XVIII դ.) Մ-ները դարձյալ ամրապնդել են իրենց դիրքերը՝ կատաղի պայքար ծավալելով հեղափոխական խավերի դեմ: Կաթոլիկ Մ-ներում գործող ճիզվիտական կազմակերպությունները դարձել են կղերականության գլխավոր զենքը՝ ընդդեմ առաջադեմ ուժերի: XVII—XIX դդ. եվրոպական բուրժ. հեղափոխությունները (հատկապես Ֆրանսիական մեծ հեղափոխությունը) լուրջ հարված հասցրին Մ-ներին: Կապիտալիստական շատ երկրներում Մ-ները դադարեցին ինքնուրույն տնտ. միավորներ լինելուց, նրանց խոշոր կալվածատիրական իրավունքը վերացվեց, վանականների թիվը խիստ կրճատվեց: ՍՍՀՄ-ում գոյատևող աննշան քանակությամբ Մ-ները սոսկ կրոնական կազմակերպություններ են:

*Գրկ.* Ի ն ճ ի ճ յ ա ն Ղ., Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի, հ. 3, Վնտ., 1835:

**ՄԵՆԱՏԻՊ**, մ ո ն ո տ ի պ ի ա (*մոնո*... և հուն. τύπος — դրոշմ), տպագիր *գրաֆիկայի* տեսակ: Մ. տեխնիկայի տպանմուշ ստանալու համար բացարձակ ողորկ տպագրական կաղապարի մակերեսին ձեռքով անց են կացնում ներկերը՝ հաստոցի վրա հերթականությամբ տպելու նպատակով: Թղթի վրա ստացված դրոշմանկարը լինում է միակը, եզակին: Մ. տեխնիկայով կատարված աշխատանքներին բնորոշ են նուրբ գունահարաբերումները, մեղմ ու սահուն ուրվագծերը և արտաքնապես ջրաներկ նկարներ են հիշեցնում: Մ. հայտնի է XVII դարից, սակայն տարածում է գտել XIX դ. վերջին և հատկապես՝ XX դ.:

**ՄԵՆԴԵԼ** (Mendel) Գրեգոր Յոհան (1822—1884), ավստրիացի բնագետ, ժառանգականության մասին գիտության հիմնադիրը (տես *Մենդելիզմ*): 1843-ին ավարտել է



Գ. Յո. Մենդել

Օլմյուցի համալսարանին կից փիլ-յան բաժինը և ձեռնադրվել Բրյունի Ավգուստինյան վանքի վանական (1868-ից՝ վանահայր): 1851—53-ին Վիեննայի համալսարանում, որպես ազատ ունկնդիր, ուսանել է ֆիզիկա, բուսաբանություն, հնէաբանություն և վերլուծական քիմիա: 1856—63-ին կատարել է ոլոռի 22 սորտերի խաչասերման փորձեր: Ստացված հիբրիդների քանակական հաշվառման հիման վրա ձևակերպել է ժառանգական գործոնների անկախ տեղաբաշխման և զուգակցման օրինաչափությունները, որոնք ժառանգականության մասին ուսմունքի հիմք հանդիսացան և հետագայում կոչվեցին *Մենդելի օրենքներ*: Մ. զբաղվել է նաև մեղվաբուծությամբ, օդերևութաբանությամբ, այգեգործությամբ, կատարել սպիտակ և մոխրագույն մկների խաչասերման փորձեր: Մ-ի հայտնագործությունները չհասկացվեցին և չգնահատվեցին ժամանակակիցների կողմից և համընդհանուր ուշադրության արժանացան միայն 1900-ին, երբ Խ. դե Ֆրիզը (Հոլանդիայում), Կ. Կորենսը (Գերմանիայում) և Է. Չ. Չերմակը (Ավստրիայում), միմյանցից անկախ, սեփական փորձերի հիման վրա հաստատեցին Մ-ի հայտնաբերած օրինաչափությունները: 1965-ին համաշխարհային գիտական հասարակայնությունը հանդիսավոր կերպով նշեց Մենդելի հայտնագործությունների հարյուրամյակը: Տես նաև *Գենետիկա*:

**ՄԵՆԴԵԼԵ ՄՈՅԽԵՐ-ՍՖՈՐԻՄ** (իսկական ազգանունը՝ Բ ր ո յ դ ե, ըստ անձնագրի՝ Շ ո լ ո մ-Յ ա կ ո վ Ա բ ր ա մ ո վ ի չ, 1835—1917), հրեա գրող: Նախապես գրել է իվրիտով: 1860-ին լույս է տեսել նրա «Աշխարհի դատաստանը» բանաստեղծությունների և հոդվածների ժողովածուն՝ ուղղված կրոնական մոլեռանդության և կահալների (հրեական համայնքի ժողով) պարագլուխների բռնությունների դեմ: Գրողն այդ ժամանակ կանգնած էր լուսավորականության դիրքերում: Պրոպագանդել է բնական գիտությունները, կազմել եռահատոր «Բնության պատմություն»-ը (1862—67): 1862-ին գրել է «Լավ սովորեք» (2-րդ, ընդլայնված խմբագրությամբ՝ «Հայրեր և որդիներ», 1868) վիպակը: 60-ական թթ. նրա հայացքները լուսավորական-նարոդնիկականից դարձել են հեղափոխական-դեմոկրատական: Այդ շրջանում Մ. Մ-Ս. սկսել է գրել իդիշով՝ ժողովրդի խոսակցական լեզվով: «Փոքրիկ մարդուկը» (1864) վիպակում ծաղրել է հարստության ձգտող խարդախներին: Նույն ոգով է գրված նաև «Գորշուկաշուն կամ Քաղաքային բարերարների հրոսակ» (1869) դրամատիկական պամֆլետը, որտեղ պատկերված են հրեական միջավայրի դասակարգային բախումները: Աշխատավորների նկատմամբ սիրով է տոգորված «Կաղ Ֆիշկան» (1869) վիպակը: 70-ական թթ. իր ստեղծագործության մեջ Մ. Մ-Ս. շարունակել է երգիծանքը («Յաբու», 1873, «Բենիամին Երրորդի ճանապարհորդությունը», 1878): «Երդմնադրյալ մատանի» (մաս 1—2, 1888), «Շլոյմե ռեբ Հայիմ» (1894—1917, «Հայրեր և որդիներ»-ի վերամշակված տարբերակը) երկերում պատկերված է հրեա ժողովրդի կյանքը: Մ. Մ-Ս. հրեական նոր գրականության առաջին դասականը, գրական լեզվի հիմնադիրն է: Նրա ստեղծագործությունը մեծ ազդեցություն է գործել հրեական գրականության զարգացման վրա, թարգմանվել է աշխարհի շատ լեզուներով:

**ՄԵՆԴԵԼԵԵՎ** Դմիտրի Իվանովիչ [27.1 (8.2).1834, Տոբոլսկ —20.1(2.2).1907, Պետերբուրգ], ռուս քիմիկոս, *տարրերի պարբերական համակարգի* հայտնագործողը, բազմակողմանի գիտնական, մանկավարժ, հասարակական գործիչ: Ավարտել է Պետերբուրգի գլխավոր մանկավարժական ինստ-ի ֆիզիկամաթեմատիկական ֆակուլտետը (1855), աշակերտել Ա. Վոսկրե-

սենսկու, Մ. Օստրոգրադսկու և Է. Լենցի։ Պետերբուրգի տեխնոլոգիական ինստ-ի (1864—66) և համալսարանի (1865—90) պրոֆեսոր։ 1876-ին Մ. ընտրվել է Պետերբուրգի ԳԱ թղթակից անդամ, իսկ ակադեմիկոսի թեկնածությունը մերժվել է (1880)՝ առաջացնելով ռուս առաջավոր մտավորականության զայրույթը։ 1890—95-ին ծովային մինիստրության գիտատեխնիկական լաբորատորիայի խորհրդատուն էր։ 1892-ից մինչև կյանքի վերջը կշռաքարերի և կշեռքների նմուշատան տնօրենն էր։ Մ-ի նախաձեռնությամբ նմուշատունը վերակառուցվել է (1893) Չափ ու կշիռների գլխավոր պալատի (այժմ՝ Դ. Մենդելեևի անվ. մետրալոգիայի համամիութենական ԳՀԻ)։ Մ-ի գիտական գործունեությունը բազմակողմանի է՝ ավելի քան 500 տպագրված աշխատանքները վերաբերում են քիմիայի, ֆիզիկայի, քիմ. տեխնոլոգիայի, օդագնացության, մետրալոգիայի (չափագիտության), գյուղատնտեսության, ժող. տնտեսության նն բնագավառներին։ Նրա «Օրգանական քիմիա» (1861) դասագիրքը արժանացել է Պետերբուրգի ԳԱ-ի Դեմիդովյան մրցանակի, իսկ «Քիմիայի հիմունքները» (հայ. հրտ., հ. 1, մաս 1—2, 1935—38) երկհատոր աշխատությունն ունեցել է 18 հրատարակություն (Ռուսաստանում 8, ՍՍՀՄ-ում՝ 5 և արտասահմանում)։ Այդ գրքում առաջին անգամ նյութը շարադրվում էր իր իսկ հայտնագործած քիմ. տարրերի պարբերական օրենքի հիման վրա։ «Տարրերի դասակարգման փորձ, հիմնված դրանց ատոմական կշիռների և քիմիական նմանության վրա» վերնագիրը կրող աղյուսակը Մ. կազմել է 1869-ի փետր. 17-ին (մարտի 1)։ Տարրերի պարբերական համակարգի հիման վրա Մ. ճշտեց մի քանի տարրերի ատոմական կշիռները և կռահեց մինչ այդ անհայտ տարրերի (գալիում, գերմանիում, սկանդիում) հատկությունները։ *Իներտ գազերի* և *ռադիոակտիվ տարրերի* հայտնագործումն է՛լ ավելի հիմնավորեց պարբերական օրենքի ճշտությունը։ Ավելի ուշ ատոմի կառուցվածքի տեսությունը վերջնականապես ապացուցեց Մ-ի առաջարկած համակարգի հիմնավորվածությունը։ Մ. տարերային մատերիալիստ էր, ընդունում էր բնության օրենքների օբյեկտիվությունը և ճանաչելիությունը։ «Ջրային լուծույթների ուսումնասիրությունը տեսակարար կշռի միջոցով» մենագրությունում (1887) շարադրված Մ-ի տեսակետները կարևոր դեր խաղացին լուծույթների ժամանակակից ուսմունքի ստեղծման գործում։ Հեղուկների «եռման բացարձակ ջերմաստիճանի» (1860—61) հայտնագործումը (տես *Կրիտիկական ջերմաստիճան*) և 1 գ մոլ. իդեալական գազի վիճակի հավասարման դուրսբերումը (1874) (տես *Կլապեյրոնի հավասարում*) Մ-ի կարևոր ներդրումներն են ֆիզիկայում։ Գործնական նշանակություն ունեն մետրալոգիայի բնագավառում նրա կատարած աշխատանքները։ Մ-ի պնդումով 1899-ին Ռուսաստանում թույլատրվեց չափման մետրական համակարգի օգտագործումը (պարտադիր դարձավ 1918-ին)։ Մ. մեծ նշանակություն էր տալիս երկրի տնտ. զարգացմանը։ Նա կանխատեսեց քարածխի ստորերկրյա զարգացման հնարավորությունը, առաջարկեց նավթի կոտորակային թորման եղանակ։ Բաքվի նավթի (1877), Դոնբասի քարածխի, երկաթահանքի և քարաղի (1888) վերամշակման նրա առաջարկները նախատեսում էին օգտակար հանածոների բազմակողմանի օգտագործում։ Ըստ Մ-ի վարկածի (1877) նավթը բարձր ջերմաստիճանում երկաթի կարբիդի և խոր ստորերկրյա ջրերի փոխազդեցության արդյունք է։ Մ. հերքում էր հողի «բերրիության նվազման» տարածված տեսությունը, երկրի տնտեսության զարգացումը կապում էր հողերի ոռոգման, պարարտացման, գետային նավագնացության զարգացման, երկաթուղիների կառուցման, Հյուսիսային ծովային ուղիների յուրացման, ինչպես նաև ստեղծագործական ուժերի, կրթության և գիտության զարգացման հետ։ 1868-ին Մ. հիմնեց (Ա. Վոսկրեսենսկու, Ն. Զինինի և Ն. Մենշուտկինի հետ) Ռուսական քիմիական ընկերությունը, որը 1932-ից դարձավ Դ. Մենդելեևի անվ. համամիութենական քիմիական ընկերություն։ Ստացել է ավելի քան 130 դիպլոմ և պատվավոր կոչում։ Նրա անվամբ են կոչվում Մոսկվայի քիմիատեխնոլոգիական և Տոբոլսկի մանկավարժական ինստ-ները, ստորջրյա լեռնաշղթա Հյուսիսային սառուցյալ օվկիանոսում, խառնարան Լուսնի վրա, գործող հրաբուխ Կունաշիր կղզում (Կուրիլյան կղզիներ), մենդելեևիտ միներալը են։ 101-րդ քիմ. տարրը առաջինը սինթեզող ամերիկացի գիտնականները (Գ. Սիբորգ և ուրիշներ, 1955) այն անվանեցին *մենդելևիում*։



Դ. Ի. Մենդելեև

Մ-ի անունը գրված է (1964-ից) Բրիջպորտի համալսարանի (Կոնեկտիկուտ նահանգ, ԱՄՆ) գիտության պատվո տախտակին։


*Երկ.* Соч., т. 1—25, М.—Л., 1934—1954 (загл. т. 2 и 3, Избр. соч.); Архив Д. И. Менделеева. Автобиографические материалы, Сб. документов, т. 1, Л., 1951; Периодический закон, доп. материалы, ред. и коммент. Б. М. Кедрова, М., 1960; Растворы, [Л.], 1959; Освоение Крайнего Севера, М.—Л., 1960; Избранные лекции по химии, М., 1968.

*Գրկ.* Պիսարժևսկի Օ. Ն., Դմիտրի Իվանովիչ Մենդելեև, Ե., 1951։ Фигуровский Н. А., Дмитрий Иванович Менделеев, 1834—1907; М., 1961; Макареня А. А., Фалимонова И. Н., Карпило Н. Г. (сост.), Д. И. Менделеев в воспоминаниях современников, 2 изд., перераб. и доп., М., 1973; Leicester H. M., D. I. Mendeleev, в кн.: Great Chemists, N. Y., 1961.


*Լ. Գրիգորյան*

**ՄԵՆԴԵԼԵԵՎԻ ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ՀԱՄԱԿԱՐԳ**, տես *Տարրերի պարբերական համակարգ* Մենդելեևի։

**ՄԵՆԴԵԼԵԵՎԻՈՒՄ** (լատ. Mendelevium), Md, արհեստականորեն ստացված ռադիոակտիվ քիմիական տարր։ *Ակտինիդ* է, կարգահամարը՝ 101, կայուն իզոտոպներ չունի։ Մ. առաջինը սինթեզել են (17 ատոմ $^{256}$Md) ամերիկացի գիտնականներ Ա. Գիորսոն, Բ. Հարվին, Գ. Չոպպին, Ս. Թոմպսոնը և Գ. Սիբորգը (1955) էյնշտեյնում ($^{253}$Es) իզոտոպը խիստ արագացված α-մասնիկներով ճառագայթելով $^{253}$Es (α, n)$^{256}$Md։ Հեղինակները տարրն անվանել են ի պատիվ Դ. *Մենդելեևի*։ Ավելի ուշ Մ-ի հարյուրավոր ատոմներ են ստացվել $^{238}$U ($^{22}$Ne, p, 3n) $^{256}$Md ռեակցիայով (Դուբնա, 1962)։ Հայտնի են 252, 254—258 զանգվածային թվերով իզոտոպներ, որոնցից ամենակայունը α-ռադիոակտիվ $^{258}$Md-ն է ($T_{1/2}$= 54 օր)։ Ծանր ակտինիդների նման լուծույթներում ցուցաբերում է +3 օքսիդացման աստիճան։ Միացություններում կարող է ունենալ նաև +2 և +1 օքսիդացման աստիճաններ։

**ՄԵՆԴԵԼԻ ՕՐԵՆՔՆԵՐ**, Մենդելի կանոններ, Գ. *Մենդելի* հայտնաբերած օրինաչափություններ, որոնք ցույց են տալիս *ժառանգականության* ընդհատ, կորպուսկուլային բնույթը։ Մենդելը խաչասերել է ոլոռի միմյանցից որոշակի հատկանիշներով տարբերվող մաքուր (դեղին և կանաչ) ձևեր և հետևել այդ հատկանիշների քանակական դրսևորմանը տարբեր սերունդներում։ Նա ձևակերպել է միայն «տարբեր հատկանիշների զուգակցման օրենքը», որով և բացատրել սերունդներում ծնողների ժառանգական գործոնների (որոնք հետագայում անվանվեցին *գեներ*) բաշխման և զուգակցման իր հայտնաբերած երևույթը։ Մ. օ-ի ժամանակակից ձևակերպումներն են. 1. առաջին սերնդի հիբրիդների միակերպության օրենք, երբ հոմոզիգոտ (տես *Հոմոզիգոտություն*) ծնողներից առաջացած առաջին սերնդի ($F_1$) հիբրիդները գենոտիպորեն և ֆենոտիպորեն միատարր են։ Դա նշանակում է, որ դեղին և կանաչ սերմերով ոլոռների խաչասերումից ստացված հիբրիդների առաջին սերնդի ($F_1$) բոլոր բույսերի սերմերը լինում են դեղին կամ կանաչ (միակերպ)։ Հատկանիշի գերակշռման այս երևույթը կոչվեց *դոմինանտություն*, հատկանիշը՝ դոմինանտ։ Արտաքուստ անհետացող հակադիր գույնը կոչվեց ռեցեսիվ (տես *Ռեցեսիվություն*)։ 2. Ճեղքավորման օրենք, առաջին սերնդի ($F_1$) հիբրիդները հետագա խաչասերման կամ ինքնափոշոտման միջոցով բազմանալիս տալիս են ճեղքավորում, որոշակի թվային հարաբերությամբ նորից երևան են գալիս ռեցեսիվ հատկանիշներով անհատներ։ 3. Գեների անկախ բաշխման (կամ անկախ ճեղքավորման) օրենք. հատկանիշների յուրաքանչյուր զույգի (ալելի) ճեղքավորումն ընթանում է հատկանիշների մյուս զույգերից անկախ, երբ խաչասերվում են մեկ զույգից ավելի ալելային գեներ։ Այսպիսով, Մենդելն ստեղծեց տեսություն, ըստ որի ժառանգական նյութական հիմքը կազմում են «ժառանգական գործոնները»։ Յուրաքանչյուր սեռական բջջում կա տվյալ հատկանիշը պայմանավորող միայն մեկ ժառանգական գործոն,

իսկ բեղմնավորված ձվաբջջում առկա են ծնողական երկու ձևերի ժառանգական գործոնները, որոնցից մեկը դոմինանտ է, մյուսը՝ ռեցեսիվ: Հաջորդ սերունդներում ժառանգական գործոնները տարբեր զուգակցություններ են առաջացնում: Մ. օ. լրիվ հաստատվեցին և բացատրվեցին *ժառանգականության քրոմոսոմային տեսության* հիման վրա:

**ՄԵՆԴԵԼԻԶՄ**, ուսմունք *ժառանգականության* օրինաչափությունների մասին, որը *գենետիկայի* հիմքը հանդիսացավ: Մ-ի առաջացումը կապում են 1900-ին Խ. դե Ֆրիզի, Կ. Կորենսի և Է. Չերմակի կողմից Գ. *Մենդելի* «Փորձեր բուսական հիբրիդների հետ» (1866) մոռացված աշխատանքի հայտնաբերման և հաստատման հետ: Եթե Մենդելի հայտնագործությունները կատարվել էին բուսական հիբրիդների երկարատև հետազոտությունների հիման վրա, ապա այդ օրինաչափությունների «երկրորդ» հայտնագործումը և ճանաչումը պայմանավորված էր բջջի բաժանման (տես *Միտոզ*), բեղմնավորման և զարգացման ուսումնասիրման հաջողություններով: Մ. և XX դ. սկզբին ստեղծված մուտացիաների տեսությունը (տես *Մուտացիաներ*) սկզբում հակասություն առաջացրին «խիստ հետևողական» դարվինիստների և մենդելիստների միջև: Խ. դե Ֆրիզը ենթադրում էր (1901—03), որ մեկ «պրոգրեսիվ» մուտացիան բավական է նոր տեսակ ստեղծելու համար: Յա. Լոտսին (1912—13) առաջ քաշեց գեների քանակի հաստատունության և անփոփոխելիության չհիմնավորված տեսություն: Նշված տեսությունները հաշվի չէին առնում, որ միայն ժառանգականության օրինաչափություններով հնարավոր չէր բացատրել էվոլյուցիայի պրոցեսը: Միաժամանակ շատ դարվինիստներ սխալմամբ ենթադրում էին, որ էվոլյուցիան կարող է ընթանալ միայն զանգվածային բնույթ կրող աննշան, աննշան փոփոխությունների հիման վրա: Նրանք թշնամաբար էին ընդունում Մ. և մուտացիաների տեսությունը՝ աշխատելով ժխտել դրանով բացահայտված օրինաչափությունների համընդհանրությունը:

Մինչև Մ. գոյություն ուներ «միաձուլյալ» ժառանգականության տեսություն, որի համաձայն խաչասերվող օրգանիզմների հատկանիշները «միաձուլվում» են, և որևէ նոր, եզակի հատկանիշ հնարավորություն չի ունենում պահպանվել: Այդ պատճառով ընդունված էր, որ *բնական ընտրությունն* անկարող է պահպանել նման հատկանիշը, եթե նույնիսկ այն օգտակար է *գոյության պայքարում*: Մ. կարողացավ հերքել նշված տեսությունը և բնական ընտրության դեմ եղած առարկությունները: Խաչասերման ժամանակ ամեն մի նոր ի հայտ եկող ժառանգական հատկանիշ կարող է մոտ սերունդներում չդրսևորվել, սակայն դա չի նշանակում, որ ժառանգականությունը որոշող գործոնը «միաձուլվել» կամ «կլանվել» է պոպուլյացիայում: Ռեցեսիվ գեներով որոշվող հատկանիշները կարող են կրկին ի հայտ գալ հետագա սերունդներում (տես *Մենդելի օրենքներ*): Միայն 1930-ական թթ. գենետիկան և Մ. ճանաչվեցին որպես ժամանակակից *դարվինիզմի* հիմքը: Մ. հեղաշրջող դեր կատարեց կենսաբանության մեջ, ապացուցեց, որ ժառանգական գործոններն ունեն կորպուսկուլյային (մասնիկային) դիսկրետ բնույթ, և սերնդից սերունդ դրանց անցումը կատարվում է վարիացիոն-վիճակագրական օրինաչափություններով: Այդ նոր սկզբունքները թույլ տվեցին վճռել դարվինիզմի առաջ կանգնած դժվարությունները և մշակել ժամանակակից ուսմունք միկրոէվոլյուցիայի պրոցեսների մասին: Մ. դարձավ միկրոօրգանիզմների, մշակովի բույսերի և ընտանի կենդանիների սելեկցիայի այժմյան մեթոդների տեսական հիմքը:

*Գրկ.* Гайсинович А. Е., Зарождение генетики, М., 1967; Ford E. B., Mendelism and Evolution, 7 ed., 1960.

**ՄԵՆԴԵԼՍՈՆ**, Մենդելսոն-Բարտոլդի (Mendelssohn-Bartholdy), Յակոբ Լյուդվիգ Ֆելիքս (3.2.1809, Համբուրգ —4.11.1847, Լայպցիգ), գերմանացի կոմպոզիտոր, դիրիժոր, դաշնակահար, երգեհոնահար: Աշակերտել է Կ. Ֆ. Ցելտերին (կոմպոզիցիա) և Լ. Բերգերին (դաշնամուր): Ինը տարեկանից ելույթներ է ունեցել իբրև դաշնակահար (հռչակվել է որպես վիրտուոզ), տասնմեկ տարեկանից՝ իբրև կոմպոզիտոր: 1829-ից ուղևորություններ է ձեռնարկել Անգլիա, Շոտլանդիա, Իտալիա, Ֆրանսիա ևն: 1829-ին Բեռլինում Մ-ի ղեկավարությամբ հնչել է Յո. Ս. Բախի «Չարչարանքներ ըստ Մատթեոսի»-ն՝ սկիզբ դնելով Բախի գրեթե մոռացված ժառանգության վերազնահատմանը: Գլխավորել է համերգային կյանքը Դյուսելդորֆում (1833-ից) և Լայպցիգում (1835-ից՝ «Գեվանդհաուզ-նվագախմբի» դիրիժոր): 1841-ին աշխատանքի է հրավիրվել Բեռլին, մեկ տարի անց վերադարձել Լայպցիգ, հիմնել Գերմանիայում առաջին կոնսերվատորիան (1843), եղել կոմպոզիտորական «լայպցիգյան դպրոցի» ղեկավարը: Ժանրերով հարուստ, ուղղվածությամբ դեմոկրատական՝ Մ-ի արվեստը, արտահայտելով նոր ռոմանտիկական միտումներ, միաժամանակ ամուր խարսխված է XVIII—XIX դդ. դասական երաժշտության ավանդույթներին: Երգայնությամբ հագեցված նրա գործերը բազմազան են կերպարներով և տրամադրություններով (լուսավոր և էլեգիական քնարականություն, բնության բանաստեղծական պատկերում, հեքիաթային-ֆանտաստիկական և սկերցոյատիպ—քմահաճ դրվագներ ևն): Մ. ռոմանտիկական սիմֆոնիայի սկզբնավորողներից է: Ժանրային վառ երանգավորում ունեն նրա 5 սիմֆոնիաներից լավագույնները՝ «Շոտլանդական» (1830—42) և «Իտալական» (1833): Մ. հիմք դրեց սիմֆոնիկ երաժշտության նոր ժանրի՝ ռոմանտիկական ծրագրային կոնցերտային նախերգանքի («Ամառային գիշերվա երազը», 1826, «Խաղաղ ծով և երջանիկ նավարկություն», 1828, «Հեբրիդներ» կամ «Ֆինգալյան քարայր», 1830 ևն): Համաշխարհային հռչակ է վայելում Մ-ի ոգեշունչ-քնարական ջութակի կոնցերտը (1844). տարածում են ստացել դաշնամուրային 2 կոնցերտները (1831, 1837), հատկապես՝ «Երգեր առանց խոսքի» դաշնամուրային նրբակերտ մանրանվագները (թվով 48), լարային անսամբլները (7 կվարտետ, 2 կվինտետ, օկտետ ևն), կանտատները, երգերն ու ռոմանսները, դրամատիկական թատրոնի երաժշտությունը («Ամառային գիշերվա երազը», ըստ Վ. Շեքսպիրի): Գերմ. օրատորիայի պատմության մեջ արժանի տեղ ունեն «Պողոս» (1836) և «Եղիա» (1846) օրատորիաները:



Ֆ. Մենդելսոն

*Գրկ.* Ворбс Г. Х., Ф. Мендельсон-Бартольди. Жизнь и деятельность в свете собственных высказываний и сообщений современников, [пер. с нем.], М., 1966; Конен В. Дж., История зарубежной музыки, 4 изд., в. 3, М., 1976. *Ա. Բուդաղյան*

**ՄԵՆԴԵՐԵՍ** (Menderes) Ադնան (1899—1961), թուրք պետական գործիչ: Խոշոր կալվածատեր: Մասնագիտությամբ՝ իրավաբան: 1927-ին ընտրվել է մեջլիսի դեպուտատ: 1946-ին ստեղծված բուրժուա-կալվածատիրական դեմոկրատական կուսակցության (ԴԿ) պարագլուխներից: 1950—60-ին եղել է պրեմիեր մինիստր, միաժամանակ՝ ԴԿ-ի նախագահ: Վարել է երկրի ռազմականացման, պրոիմպերիալիստական, կրոնական մոլեռանդությունը բորբոքելու, ազգային փոքրամասնություններին ճնշելու, հակակոմունիզմի և հակասովետիզմի քաղաքականություն, հանդես եկել արաբ. երկրների ու Կիպրոսի ազգային անկախության դեմ: Մեղադրվել է պետ. հանցագործության մեջ և մահապատժի ենթարկվել:

*Ռ. Կոնդակչյան*

**ՄԵՆԵԼԱՈՍ** (հուն. Μενέλαος), հին հունական դիցաբանությունում Սպարտայի թագավորը, Տրոյական պատերազմի կազմակերպիչներից և գործուն մասնակիցներից: Ագամեմնոնի կրտսեր եղբայրը, Հեղինեի ամուսինը: Առևանգված Հեղինեին ետ բերելու նպատակով Ոդիսևսի հետ մեկնել է Տրոյա, սակայն անհաջողություն է կրել: Դրան հաջորդած տրոյական պատերազմում աչքի է ընկել քաջագործություններով (մենամարտում հաղթել է Պարիսին, պաշտպանել և ռազմի դաշտից դուրս է բերել Պատրոկլեսի դին): Պատերազմից հետո հայրենիք վերադարձող Մ-ի նավերը փոթորկից քշվել են Եգիպտոսի ափերը: Մ. և Հեղինեն Սպարտա են վերադարձել ութամյա թափառումներից հետո: Մահվանից հետո Մ. իբր բնակվել է հեքիաթային Ելիսեյան դաշտերում: Լակոնիկայում գոյություն է ունեցել Մ-ի պաշտամունք (կապված Հեղինեի պաշտամունքի հետ):

**ՄԵՆԵՋԵՐՆԵՐ** (անգլ. manager, < manage — կառավարել), ժամանակակից կապիտալիստական հասարակության սոցիալական յուրահատուկ խավ, որն ընդգրկում է պրոֆեսիոնալ վարձու կառավա-

րիչներին (ձեռնարկության դիրեկտորներ, կոնցեռնների, տրեստների, սինդիկատների առանձին ստորաբաժանումների ղեկավարներ)։ Վարչատնտեսական ղեկավարման ոլորտում, ֆինանսական և տնտ. կարևորագույն հարցերում հիմնականում ինքնուրույն են, սակայն կապիտալի սեփականատերերի նկատմամբ իշխանություն չունեն։ Զարգացած կապիտալիստական երկրներում գործում են բարձրագույն որակավորման կառավարիչների՝ Մ-ի հատուկ դպրոցներ։

**ՄԵՆԵՋՄԵՆՏ** (< անգլ. management — կառավարում), կապիտալիստական ձեռնարկության կառավարման տեսության և պրակտիկայի ընդհանուր անվանումը։ Մ-ի պատմական զարգացման ընթացքում կարելի է առանձնացնել երեք փուլ։ Դասական Մ. (*թեյլորիզմը*) ելնում է «տնտեսական մարդու» ըմբռնումից։ Հաջորդ փուլը «*մարդկային հարաբերությունների*» *տեսությունն* է, որի հիմքում ընկած է «հոգեբանական մարդու» ըմբռնումը։ 1960-ական թթ. ձևավորվում է, այսպես կոչված, «սուբյեկտին կողմնորոշված Մ.», որի տեսական հիմքն են «սոցիոլոգիական մարդու» տարբեր մոդելները։ Մ-ի հիմնական խնդիրը սուբյեկտի ինքնազարգացման պահանջմունքների օգտագործումը և բուն աշխատանքի նկատմամբ հետաքրքրություն խթանելն է։ Մ-ի խնդիրների և միջոցների զարգացումը, արտացոլելով աշխատանքի սուբյեկտին ներկայացվող օբյեկտիվ տեխնոլոգիական պահանջները, նպատակ ունի մեղմացնել աշխատանքի և կապիտալի հակամարտությունը։ Սակայն վարձու աշխատանքի շահագործման պայմաններում «արտադրական դեմոկրատիայի», «աշխատանքի հումանիզացման» և այլ ծրագրեր սկզբունքորեն անիրագործելի են։ Արտադրության միջոցների կապիտալիստական սեփականության պայմաններում *մենեջերների* «հաշտարար» դերի, կապիտալիզմը բարենորոգող մենեջերիզմի մասին դատողությունները միանգամայն անհիմն են։ Մ-ի առանձին նվաճումները կարող են կիրառվել սոցիալիստական հասարակության պայմաններում։

Գրկ. Жеманов О. Н., Буржуазная индустриальная социология, М., 1974; Мирзоян В. А., Научно-техническая революция и изменение содержания труда, Е., 1977; Drucker H. F., People and Performance, L., 1977. *Վ. Միրզոյան*

**ՄԵՆԵՍՏՐԵԼ** (ուշ լատ. ministerialis — ծառայության մեջ գտնվող), 1. ֆեոդալական Ֆրանսիայում և Անգլիայում պրոֆեսիոնալ երգիչ ու երաժիշտ, երբեմն՝ ասացող և ասմունքող, հաճախ միաժամանակ՝ բանաստեղծ ու կոմպոզիտոր։ XII—XIII դդ. պալատական ֆեոդալական բանաստեղծական և երաժշտական արվեստի տարածման շրջանում Մ-ները մեծ մասամբ ծառայել են սինյորի մոտ, ռազմ. արշավանքների ժամանակ ուղեկցել նրան։ XIV—XVIII դդ. Մ. են կոչվել նաև ժող. երաժիշտները, որոնք հաճախ տարածել են քաղ. նորությունները, մասնակցել ժող. շարժումների, որի համար ենթարկվել են իշխանությունների ու եկեղեցու հետապնդումներին։ 2. Բանաստեղծական փոխաբերական իմաստով՝ երգիչ, պոետ։

**ՄԵՆԵՎԻՇՅԱՆ** Գաբրիել (Բյուզանդ) Գեվորգի [3(16).4.1864, Կ. Պոլիս — 14.11. 1936, Նովի սադ, Սերբիա], լեզվաբան, հայագետ։ 1878-ին մեկնել է Վիեննա, 1882-ին դարձել միաբանության անդամ։ 1886—89-ին դասախոսել է միաբանության դպրոցում։ 1889-ին մեկնել է Կ. Պոլիս, ապա՝ Զմյուռնիա և մինչև 1892-ը պաշտոնավարել տեղի Մխիթարյան դպրոցում։ 1892—1913-ին՝ Կ. Պոլսի Մխիթարյան դպրոցի ուսուցիչ, ապա՝ տնօրեն (որոշ ընդմիջումներով)։1895—96-ին եղել է«Հանդես ամսօրյա»-ի խմբագիրը։ 1913-ին Մխիթարյան միաբանության վարչությունը Մ-ին ուղարկել է Նովի սադ՝ միաբանության տնտ. գործերը տնօրինելու։ Մ. իր ուսումնասիրություններում քննել է հայերեն բառերի ծագումնաբանությունը, պարզաբանել ոսկեդարյան հայերենի, աշխարհաբարի քերականության և ուղղագրության որոշ հարցեր։ «Արդի լեզվագիտությունը» (հ. 1, 1903) աշխատության մեջ շարադրել է ժամանակի լեզվաբանության նվաճումները։ Գրել է նաև «վոլապյուկ» արհեստական լեզվի, գրելու արվեստի («Գիրք գրելու արվեստը», 1898), գրական քննադատության դերի և այլ խնդիրների մասին։ Մանկավարժական գրականության բնագավառում առանձնանում է Մ-ի եռահատոր «Պատկերազարդ բնական պատմություն» (1897) դասագիրքը, որը ներառնում է կենդանաբանությունը, բուսաբանությունն ու հանքաբանությունը։ Մ. անդրադարձել է նաև ազգագրական ու բանասիրական այլևայլ խնդիրների։ Կատարել է թարգմանություններ։ *Խ. Կարադեկյան*

**ՄԵՆԵՐԳ**, փոքրածավալ վոկալ ստեղծագործություն, հեղինակային *երգ*՝ մենակատարման համար (ի տարբերություն *խմբերգի*), մեծ մասամբ՝ նվագակցությամբ։ «Մ.» անվանումը լայն ընդգրկում ունի. մաս կազմելով օպերայի, կանտատի կամ օրատորիայի՝ Մ. մոտենում է *արիային*, կամերային երգարվեստում զուգադրվում *ռոմանսի* հետ, տարբերվելով դրանցից համեմատաբար պարզ բովանդակությամբ, սովորաբար տուն-տուն կառուցվածքով, ժանրային բազմատեսակությամբ։ Մ-ի օրինակներ են՝ Իշխան Տոմսկու երգը Պ. Ի. Չայկովսկու «Պիկովայա դամա», Շեյխի երգը Ա. Սպենդիարյանի «Ալմաստ» օպերաներից, Սոլվեյգի երգը Իբսենի «Պեր Գյունտ» դրամայի համար է. Գրիգի գրած երաժշտությունից, Մոր երգը Դ. Կաբալևսկու Ռեքվիեմից, «Օրորոցային»-ը Ա. Հարությունյանի «Հայրենիք» կանտատից են։ Մ-եր են նաև Բեթհովենի «Հեռավոր սիրուհուն» շարքի երգերը, Շուբերտի, Բրամսի, Լիստի և այլոց վոկալ-կամերային այն գործերը, որոնք երգի ու ռոմանսի միջանկյալ ձևն ունեն, ինչպես նաև ձայնի և դաշնամուրի համար Կոմիտասի մշակած ժող. երգերը («Հով արեք», «Գարուն ա», «Քելեր, ցոլեր» ևն)։ *Ռ. Աթայան*

**ՄԵՆԵՐԵՆ**, տես *Կելտական լեզուներ*։

**ՄԵՆԶՈՒԼԱՅԻՆ ՀԱՆՈՒՅԹ**, տեղագրական հանույթի տեսակ, որը կատարվում է գեոդեզիական գործիքների օգնությամբ։ Մ. հ-ի ընթացքում տեղանքի բնորոշ կետերը կառուցվում են գրաֆիկորեն։ Այդ կետերով ուրվագծվում են հողահանդակները, գետերը, լճերը, բնակավայրերը և այլ տարրեր՝ տրված մասշտաբով։ Եթե Մ. հ-ի միջոցով ստանում են տեղանքի հատակագիծը կամ քարտեզը առանց ռելիեֆի, հանույթը կոչվում է հորիզոնական։ Իսկ եթե պատկերվում է նաև տեղանքի ռելիեֆը (հորիզոնականներով), հանույթը կոչվում է ուղղաձիգ։ *Գ. Սարգսյան*

**ՄԵՆԶՈՒՐ** (< լատ. mensura — չափ), տես *Չափագլան*։

**ՄԵՆԹՈԼ**, 3-մ ե թ ի լ — 6-ի զ ո պ ր ո պ ի լ ց ի կ լ ո հ ե ք ս ա ն ո լ, դաղձի հոտով, կծվահամ, անգույն բյուրեղական նյութ է։ Հալ. ջերմաստիճանը՝ 43°C, եռ. ջերմաստիճանը՝ 216°C։ Լավ լուծվում է օրգ. լուծիչներում, վատ՝ ջրում։ Դաղձի եթերային յուղի հիմնական բաղադրիչն է։ Հայտնի են 12 տարածական իզոմեր։




Մ. թույլ ցավազրկող է և ախտահանիչ։ Սպիրտային և յուղային լուծույթներն օգտագործվում են քորի, անգարի, նյարդացավի, վերին շնչառական ուղիների բորբոքումների ևն դեպքում։ Մտնում է Զելենինի կաթիլների, վալիդոլի և այլ դեղանյութերի բաղադրության մեջ։ Մ. օգտագործվում է նաև սննդարդյունաբերության, օծանելիքի արտադրության մեջ և կոսմետիկայում։

**ՄԵՆԺԻՆՍԿԻ** Վյաչեսլավ Ռուդոլֆովիչ (1874—1934), սովետական պետական և կուսակցական գործիչ։ Կոմունիստական կուսակցության անդամ 1902-ից։ 1905-ին եղել է ՌՍԴԲԿ Պետերբուրգի կոմիտեին կից ռազմ. կազմակերպության և բոլշևիկյան «Կազարմա» («Казарма») թերթի խմբկոլի անդամ։ 1906-ին ձերբակալվել է, փախել և տարագրվել։ Աշխատել է ՌՍԴԲԿ արտասահմանյան կազմակերպություններում։ 1917-ին վերադարձել է Ռուսաստան. ՌՍԴԲ(բ)Կ ԿԿ-ին կից ռազմ. կազմակերպության բյուրոյի «Սոլդատ» («Солдат») և «Պրավդա» («Правда») թերթերի խմբկոլների անդամ։ 1917-ի Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո եղել է ֆինանսների ժողկոմ, ՌՍՖՍՀ գլխավոր հյուպատոս Բեռլինում (1918—19), Ուկրաինայի բանգյուղտեսչության ժողկոմ (1919), Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողովի (ՎՉԿ) նախագահության անդամ (1919-ի վերջ —1923), Միացյալ պետքաղվարչության նախագահի տեղակալ (1923—26), 1926-ից՝ նախագահ։ Եղել է ՀամԿ(բ)Կ XV—XVII համագումարների պատգամավոր, XV—XVI-ում ընտրվել է ՀամԿ(բ)Կ ԿԿ անդամ։ ՍՍՀՄ ԿԳԿ անդամ։ Պարգևատրվել է Կարմիր դրոշի շքանշանով։ Աճյունն ամփոփված է Կարմիր հրապարակում, Կրեմլի պատի մեջ։

Դիմանկարը տես 462-րդ էջում։

**ՄԵՆԻԵ** (Meunier) Կ ո ն ս տ ա ն տ ե ն Էմիլ (1831—1905), բելգիացի քանդակագործ և նկարիչ։ Աշակերտել է եղբորը՝ Ժ. Բ. Մենիեին, Բրյուսելի Գեղարվեստի ակադեմիայում՝ Ֆ. Ժ. Նավեզին։ 1851-ին



Վ. Ռ. Մենժինսկի



Կ. Մենյե

սկսել է որպես ակադեմիական ուղղության քանդակագործ, սակայն շուտով անցել է գեղանկարչությանը: Գ. *Կուրբեի*, Ֆ. *Միլլեի* արվեստի և Շ. դե Գրուի ազդեցությամբ ուժեղացել են Մ-ի ստեղծագործության ռեալիստական գծերը, որոնք դրսևորվել են կրոնական և պատմական սյուժեներով զուտանկարներում: 1870—1880-ական թթ. Բելգիայի արդ. շրջաններն ու Իսպանիա կատարած ուղևորությունները Մ-ին հանգեցրել են նոր թեմայի՝ բանվորների, նրանց աշխատանքային առօրյայի պատկերմանը («Հանքահոր» բազմաֆիգուր եռանկար, մոտ 1878, Կ. Մենյեի թանգարան, Բրյուսել): 1880-ական թթ. կեսերին վերադարձել է քանդակագործությանը: Կերտելով տարբեր մասնագիտության տեր բանվորների կերպարներ՝ Մ. ձգտել է աշխատանքային թեմային հաղորդել հերոսական հնչողություն («Մրճահար», 1885, բրոնզ, Կ. Մենյեի թանգարան), ցույց տալ կապիտալիստական լծի ծանրությունը («Ջուլհակը», բրոնզ, 1886, Հին արվեստի թանգարան, Բրյուսել): Մ-ի քանդակներն աչքի են ընկնում ընդհանրացվածությամբ, հաճախ՝ կերպարների այլաբանությամբ ու մանրամասների դիպուկ պատկերմամբ, գրաֆիկական առտահատիչ ուրվագծով, բրոնզյա



Կ. Մ ե ն յ ե. «Բեռնակիր» (մոտ 1905, Մենյեի թանգարան, Բրյուսել)

մակերեսի գեղանկարչական մշակումով: 1880-ական թթ. աշխատել է «Հուշարձան աշխատանքին» կոմպոզիցիայի վրա (ավարտվել է Մ-ի մահից հետո, բացումը՝ 1930, Բրյուսել): Մ-ի արվեստը մեծ նշանակություն է ունեցել բանվորական շարժումների հետ կապված XX դ. ռեալիստական արվեստի զարգացման համար:

**ՄԵՆԻՆԳԻՏ** (< հուն. μῆνιγξ — ուղեղի թաղանթ), *գլխուղեղի* և *ողնուղեղի* թաղանթների բորբոքում: Գլխուղեղի փափուկ թաղանթի բորբոքումը կոչվում է լ ե պ տ ո մ ե ն ի ն գ ի տ, կարծր թաղանթինը՝ պ ա խ ի մ ե ն ի ն գ ի տ: Մ. դասակարգում են ըստ հիվանդության հարուցիչի բնույթի (վիրուսային, սնկային, բակտերիային, մենինգակոկային, տուբերկուլոզային, սիֆիլիսային ևն), ընթացքի (սուր, ենթասուր, քրոնիկական), *ուղեղ-ողնուղեղային հեղուկի* փոփոխությունների (թարախային, շճային), հիվանդության զարգացման՝ առաջնային և երկրորդային: Առաջնային Մ-ի խումբը դիտվում է որպես ինքնուրույն հիվանդություն (օրինակ, էպիդեմիկ ուղեղ-ողնուղեղային Մ.), որը սուր վարակիչ հիվանդություն է, բնորոշվում է նյարդային յուրատիպ ախտանշանների առաջացմամբ: Հարուցիչը Վեյխսելբաումի մենինգակոկն է: Երկրորդային Մ-ները զարգանում են որպես վնասվածքների կամ այլ հիվանդությունների բարդություններ (օրինակ, վարակը օրգանիզմի այլ օջախներից ուղեղաթաղանթներն անցնելիս): Մ-ով հաճախ հիվանդանում են երեխաները: Սուր Մ. սկսվում է հանկարծակի, ջերմության բարձրացմամբ: Ներգանգային ճնշման բարձրացման և գլխուղեղային թաղանթների գրգռվածության հետևանքով առաջանում են ուժեղ գլխացավեր և փսխումներ: Լույսը, աղմուկը, շփումը առաջացնում են հիվանդի ուժեղ բացասական ռեակցիա: Բավական արագ զարգանում են մենինգյալ ախտանշանները, անկողնում հիվանդներն ընդունում են բնորոշ դիրք՝ կողքի վրա, գլուխը ետ գցած, ոտքերը որովայնին կպցրած: Երեխաների մոտ հաճախ զարգանում են ջղաձգումներ: Հայտնի են նաև Մ-ի ատիպիկ, կլինիկական թեթև ձևեր: Մ-ի որոշ տեսակներ (աղենովիրուսային ևն) կարող են ուղեկցվել մկանային ցավերով, աղիքային խանգարումներով, երբեմն՝ գլխուղեղային նյարդերի ախտահարմամբ: Տուբերկուլոզային Մ. զարգանում է աստիճանաբար, զգացողության երկարատև վատացմամբ (ընդհանուր թուլություն, գլխացավեր, ջերմության թեթև բարձրացում): Ա խ տ ո ր ո շ ու մ ը՝ համաճարակային անամնեզի, հիվանդության կլինիկական արտահայտության և քիթըմպանային լորձաթաղանթի ու ուղեղ-ողնուղեղային հեղուկի բակտերիալոգիական հետազոտության տվյալներով: Բ ու ժ ու մ ը կոմպլեքսային է, հիվանդանոցային պայմաններում, հիմնականում՝ անտիբիոտիկների ու սուլֆանիլամիդային պատրաստուկների զուգակցմամբ: Նշանակում են նաև ուղեղի այտուցը պակասեցնող (ջրազրկող), հանգստացնող դեղամիջոցներ, վիտամիններ, լիարժեք սնունդ: Մ-ի ժամանակին բուժումը հանգեցնում է լրիվ առողջացման: Կ ա ն խ ա ր գ ե լ ու մ ը. մենինգակոկային Մ-ով հիվանդների մեկուսացում և օջախի ախտահանում, առողջ վարակակիրների հայտնաբերում և վարակազերծում, տուբերկուլոզի և սիֆիլիսի լիարժեք բուժում: *Գ. Միրզոյան*

**ՄԵՆԻՍԿ** (< հուն. μηνίσκος — կիսալուսին), հեղուկի ազատ կոր մակերևույթը՝ պինդ մարմնի մակերևույթի հետ հպման տեղում: Առաջանում է անոթների պատերի միջև, հեղուկով ներծծված ծակոտկեն մարմինների անցուղի-ծակոտիներում ևն: Մ-ի կորությունը որոշվում է երեք ֆազերի (պինդ, հեղուկ, գազ) սահմանում միջմոլեկուլային փոխազդեցության ուժերի հարաբերակցությամբ: Տրվյալ մակերևույթը թրջող հեղուկը (տես *Թրջում*) առաջացնում է գոգավոր Մ., իսկ չթրջող հեղուկը՝ ուռուցիկ (նկ.): Տես նաև



*Մազական երևույթներ*: Օ պ տ ի կ ա յ ու մ Մ ուռուցիկ-գոգավոր (կամ գոգավոր-ուռուցիկ) *ոսպնյակ* է, որը սահմանափակված է երկու գնդային մակերևույթներով:

**ՄԵՆԻՍԿԱՅԻՆ ԱՍՏՂԱԴԻՏԱԿ**, հայելաոսպնյակային *աստղադիտակի* տեսակ, որի օպտիկական համակարգը բաղկացած է ապակե մենիսկից (գնդային մակերևույթներով գոգավոր-ուռուցիկ ոսպնյակից) և գոգավոր-գնդաձև հայելուց: Մ. ա. ստեղծել է Դ. Դ. *Մաքսուտովը* 1941-ին: (Տես *Մաքսուտովի աստղադիտակ*):

**ՄԵՆՀԻՐՆԵՐ** (բրետոններեն menhir, <men — քար, hir — երկար), նախնադարյան համայնական դարաշրջանի պաշտամունքային հուշակոթողներ՝ նվիրված նախնյաց հիշատակին: Մ. ուղղահայաց դիրքով կանգնեցված հսկա քարեր են, 3—20 *մ* բարձրությամբ և մինչև 300 *տ* քաշով: Հանդիպում են հաճախ մեգալիթյան այլ հուշարձանների՝ *դոլմենների* և *կրոմլեխների* հետ: Մ. տարածված են Անդրկովկասում, Արևմտյան Եվրոպայում, Միջերկրական ծովի և Ատլանտյան օվկիանոսի առափնյա շրջաններում: Նշանավոր է Բրետանի (Ֆրանսիա) հուշարձանախումբը, որտեղ կան մի քանի հազար Մ., մեծ մասամբ ուղղաձիգ շարքերով տեղադրված:

Հայաստանում Մ. են հայտնաբերվել Արագածի լանջերին, Շիրակում և Զանգեզուրում: *Կ. Ղաֆադարյան*

**ՄԵՆՅԵՐԻ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆ**, ախտաբանական վիճակ, արտահայտվում է գլխապտույտի նոպաներով, ականջում աղմուկի զգացումով, լսողության միակողմանի թուլացումով, սրտխառնոցով, փսխումով և հավասարակշռության խանգարումով: Նկարագրել է ֆրանսիացի բժիշկ Պ. Մենյերը, 1861-ին: Առավել հաճախ հիվանդանում են 25—40 տարեկանում: Նոպան կարող է տևել մի քանի ժամից մինչև մի քանի օր և պայմանավորված է անդաստակ-խխունջային նյարդի ծայրամասային բաժինները սնող արյան անոթների տոնուսի խանգարումներով: Անմիջական պատճառ կարող է դառնալ նաև ներքին ականջի էնդոլիմֆայի ճնշման բարձրացումը: Հաճախակի նոպաները կարող են հանգեցնել *խլության*: Մ. հ-յան նման վիճակ կարող է նկատվել նաև ուղեղի օրգ.

որոշ հիվանդությունների (օրինակ՝ արախնոիդիտի ևն) դեպքում:

Բ ու ժ ու մ ը. ստրիխնինի, պրոզերինի ներարկումներ, ֆիզիոթերապևտիկ պրոցեդուրներ (ՈւԲՀ, գալվանական օձիք), բուժական մարմնամարզություն, ներքին ականջի և ուղեղի արյան անոթները լայնացնող (պիլոկարպին, նիկոտինաթթու, պապավերին), ուղեղաբնի գրգռականությունն իջեցնող (ծծմբաթթվային ատրոպին, ամինազին, հալոպերիդոլ ևն) դեղանյութեր, երբեմն՝ վիրաբուժական միջամտություն:

**ՄԵՆՅՈՒԿ** Գեորգի Նիկոլաևիչ (կեղծանունը՝ Ջորջե Մենյուկ, ծն. 20.5.1918, Քիշնև), մոլդավացի սովետական գրող: ՍՄԿԿ անդամ 1953-ից: Սովորել է Բուխարեստի համալսարանի փիլ. ֆակուլտետում (1937—40): 1939-ին լույս է տեսել նրա «Ներքին տիեզերական աշխարհ» բանաստեղծությունների ժողովածուն: «Արշալույսի երգը» (1948) պոեմում արտացոլել է մոլդավ. գյուղի սոցիալիստական վերափոխումները: Հրատարակել է «Բալլադներ և սոնետներ» (1955), «Ընտիր բանաստեղծություններ» (1958), «Լերայի ժամանակը» (1969) ժողովածուները, գրական էսսեների մի քանի գիրք, «Վերջին վագոնը» (1965), «Դելֆին» (1969, Մոլդավ. ՍՍՀ պետ. մրցանակ, 1972) պատմվածքների ժողովածուները և այլ գործեր:

*Գրկ.* Կաչաղակի խնջույքը, Ե., 1971:

**ՄԵՆՆԻՆԳ** Կարլ (1874—1941), էստոնացի ռեժիսոր: Էստոնական թատրոնի պրոֆեսիոնալ ռեժիսուրայի հիմնադիրը: 1893—1901-ին սովորել է Տարտուի համալսարանի աստվածաբանության ֆակուլտետում: 1906-ից ղեկավարել է «*Վանեմույնե*» (Տարտու) թատրոնը: Լավագույն բեմադրություններից են՝ Իբսենի «Հասարակության նեցուկները» (1907), «Ժողովրդի թշնամին» (1908), Կիտցբերգի «Քսակի աստվածը» (1912): Մ-ի ղեկավարությամբ ձևավորվել է մի շարք էստոնացի նշանավոր դերասանների արվեստը: 1914-ին ստիպված թողել է թատրոնը: Մինչև 1918-ը եղել է թատերական քննադատ, այնուհետև (մինչև 1937-ը) զբաղվել դիվանագիտական գործունեությամբ:

**ՄԵՆՇԵՎԻԶՄ**, գլխավոր օպորտունիստական հոսանքը Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատիայի մեջ, միջազգային օպորտունիզմի տարատեսակ. մտել է II Ինտերնացիոնալի (տես *Ինտերնացիոնալ II*) օպորտունիստական մեծամասնության մեջ: Ձևավորվել է *ՌՍԴԲԿ երկրորդ համագումարում* (1903), միավորելով նոր տիպի մարքսիստական կուսակցության (տես *Բոլշևիզմ*) ստեղծման լենինյան պլանի հակառակորդներին: Անունն ստացել է կուսակցության կենտրոնական մարմինների ընտրության ժամանակ փոքրամասնություն (меньшинство) կազմելու պատճառով: Մ-ի ղեկավարներն էին Լ. Մարտովը, Ա. Մարտինովը, Ա. Պոտրեսովը, Պ. Աքսելրոդը, Ֆ. Դանը: ՌՍԴԲԿ II համագումարից հետո Մ-ին հարեց Գ. Վ. *Պլեխանովը*: Մ. մանրբուրժուական կուսակցություն էր, որը չուներ մասսայական պրոլետարական բազա. «...մենշևիկները,— նշել է Վ. Ի. Լենինը,— ոչ-պրոլետարական խավ են: Այդ խավի մեջ պրոլետարական են միայն աննշան վերնամասերը, իսկ նա ինքը կազմված է մանր ինտելիգենցիայից» (Երկ., հ. 29, էջ 212): Որպես քաղ. հոսանք Մ. միասնական չէր: Մ-ի տարատեսակներից էր *տրոցկիզմը*՝ իր առաջացման շրջանում: Մ. մարքսիզմը ընկալում էր դոգմատիկորեն, չհասկանալով նրա դիալեկտիկան: Ընդունելով հեղափոխության իրականացման համար օբյեկտիվ պայմանների նշանակության մասին մարքսիստական դրույթը՝ Մ. կեղծ հետևություն էր անում սուբյեկտիվ գործոնի՝ հեղափոխության նախապատրաստման և իրականացման ընթացքում նրա ավանգարդի գիտակցականության ու կազմակերպվածության աննշան դերի մասին: Այստեղից էլ պրոլետարիատի գաղափարական առաջնորդի ու կազմակերպչի՝ կուսակցության դերի լրիվ անտեսումը Մ-ի կողմից: ՌՍԴԲԿ II համագումարում Մ-ի օպորտունիզմը դրսևորվեց կազմակերպական հարցերում. կենտրոնացված մարքսիստական կուսակցության և կուսակցական խիստ կարգապահության անհրաժեշտության ժխտում, կողմնորոշում դեպի Արևմտյան Եվրոպայի ս-դ. կուսակցությունները, որոնք կիրառում էին «բաց դռների» քաղաքականություն, այստեղից էլ Մ-ի թեզը՝ կուսակցության մեջ բոլոր ցանկացողներին ընդունելու մասին, առանց պարտավորեցնելու նրանց լինել կուսակցության կազմակերպություններից որևէ մեկի անդամ և ենթարկվելու կուսակցական կարգապահությանը: Քողարկվելով մարքսիզմով՝ Մ. իրականում խեղաթյուրում էր այն: Համագումարից հետո Մ. ՌՍԴԲԿ-ի մեջ ձևավորվեց որպես առանձնակի ֆրակցիա, կանգնելով կուսակցության պառակտման ու կազմալուծման ուղու վրա: Մ-ի քաղ. և տակտիկական դիրքորոշումը ձևակերպվեց մենշևիկների Ժնևի կոնֆերանսում (1905)՝ Ռուսաստանում սկսված բուրժուա-դեմոկրատական հեղափոխության (1905—07) պայմաններում: Հաշվի չառնելով պատմական նոր պայմանները, Մ. պրոլետարիատին կողմնորոշում էր դաշինքի լիբերալ բուրժուազիայի հետ, ժխտում էր գյուղացիության հեղափոխական դերը, պրոլետարիատի գլխավորությամբ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի՝ որպես հեղափոխության հաղթանակի գլխավոր պայմանի անհրաժեշտությունը: Մ. հանդես էր գալիս ընդդեմ պրոլետարիատի և գյուղացիության հեղափոխական-դեմոկրատական դիկտատուրայի, սոցիալ-դեմոկրատների մասնակցությանը ժամանակավոր հեղափոխական կառավարությանը, զինված ապստամբության նախապատրաստմանը: Մենշևիկները բանվորների դեպուտատների սովետները համարում էին միայն տեղական ինքնավար մարմիններ՝ չկապելով նրանց գործունեությունը զինված ապստամբության հետ: Ագրարային հարցում հանդես էին գալիս ընդդեմ կալվածատիրական հողերի բռնագրավման, առաջ քաշելով *հողի մունիցիպալացման* (մունիցիպալիզացիայի) ռեֆորմիստական ծրագիրը: Դեկտեմբերյան զինված ապստամբության (1905) պարտությունից հետո մենշևիկները այն անվանեցին «պատմական սխալ»՝ հետևություն անելով, որ «պետք չէր զենքի դիմել»: Ռեակցիայի տարիներին (1908—10) մենշևիկները ձգտում էին վերացնել անլեգալ մարքսիստական բանվորական կուսակցությունը և ստեղծել լեգալ ռեֆորմիստական «ստոլիպինյան բանվորական կուսակցություն» (տես *Լիկվիդատորներ*): Կուսակցության անլեգալ կազմակերպությունների լիկվիդացման դեմ հանդես եկավ մենշևիկ-կուսակցականների ոչ մեծ խումբ՝ Պլեխանովի գլխավորությամբ: ՌՍԴԲԿ VI (Պրագայի) համառուսաստանյան կոնֆերանսը (1912) կուսակցությունից վտարեց մենշևիկ-լիկվիդատորներին, մենշևիկ-կուսակցականների այն մասը, որը չընդունեց կոնֆերանսի որոշումները, նույնպես դուրս մնաց կուսակցությունից: Այդ պահից Մ. գոյատևեց որպես ինքնուրույն կուսակցություն՝ կրելով նույնպես ՌՍԴԲԿ անվանումը և ապա ընտրելով իր կենտրոնը՝ Կազմակերպական կոմիտեն: Առաջին համաշխարհային պատերազմի (1914—18) տարիներին մենշևիկների հիմնական մասը կանգնեց սոցիալ-շովինիզմի դիրքերում՝ քարոզելով «հայրենիքի պաշտպանության» բուրժ. լոզունգը: 1917-ի Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխության ժամանակ մենշևիկները, էսէռների հետ սովետներում գրավելով ղեկավար դիրք, իշխանությունը հանձնեցին բուրժ. Ժամանակավոր կառավարությանը և ապա մտան նրա մեջ: 1917-ի հուլիսյան օրերից հետո մենշևիկները վերջնականապես անցան հակահեղափոխության կողմը՝ մերկացնելով իրենց որպես բուրժուազիայի գործակիցներ: Մ. հանդես եկավ 1917-ի Հոկտեմբերյան հեղափոխության դեմ: 1917-ի նոյեմբերին կայացած Մ-ի վերջին համագումարն անցավ հակաբոլշևիզմի և հակասովետական պայքարի համար ուժերի մոբիլիզացման նշանաբանով: Մենշևիկները պահանջում էին իշխանությունը հանձնել Սահմանադիր ժողովին, դեմ էին *Բրեստի հաշտությանը 1918*, արդյունաբերության ազգայնացմանը, կարմիր բանակի ստեղծմանը ևն: Քաղաքացիական պատերազմից (1918—20) հետո մենշևիկների մնացուկները, անցնելով ընդհատակ, շարունակեցին իրենց հակասովետական գործունեությունը: 1931-ին մերկացվեց մենշևիկների «ՌՍԴԲԿ ԿԿ-ի միութենական բյուրո» հակահեղափոխական խումբը, որը վնասարարական աշխատանք էր տանում սովետական տնտ. մարմիններում: Մ-ի լիակատար սնանկացումը մենշևիկների կողմից դեմոկրատիայի և սոցիալիզմի գործին դավաճանելու օրինաչափ հետևանք էր:

*Գրկ.* Լ ե ն ի ն Վ. Ի., Մենշևիզմի կրիզիսը, Երկ., հ. 11: Ն ու յ ն ի, Մենշևիկյան նոր կոնֆերենցիան, նույն տեղում, հ. 9: Ն ու յ ն ի, Մենշևիկների տակտիկական պլատֆորմը: Մարտի երկրորդ կես, նույն տեղում, հ. 12: Ն ու յ ն ի, Մենշևիկների ու նարոդնիկների խայտառակ բլոկը «Единство»-ի հետ, նույն տեղում, հ. 24: ՍՄԿՊ-ն համագումարների, կոնֆերենցիաների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, մաս 1, Ե., 1954: История КПСС, т. 1—3, М., 1964—67.

**ՄԵՆՇՈՎ** Դմիտրի Եվգենևիչ (ծն. 1892, Մոսկվա), սովետական մաթեմատիկոս,

ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ (1953): Ավարտել է Մոսկվայի համալսարանը (1916), 1922-ից՝ պրոֆեսոր նույն տեղում: Արմատական արդյունքներ է ստացել ֆունկցիաները եռանկյունաչափական շարքերով ներկայացնելու և միակության պրոբլեմների, ընդհանուր օրթոգոնալ շարքերի զուգամիտության և գումարելիության տեսության վերաբերյալ: Հետազոտություններ ունի նաև կոնֆորմ արտապատկերումների տեսության և կոմպլեքս փոփոխականի ֆունկցիաների մոնոգենության տեսության վերաբերյալ: ՍՍՀՄ պետ. մրցանակի դափնեկիր (1951): Պարգևատրըվել է Լենինի շքանշանով:

**ՄԵՆՇՈՒՏԿԻՆ** Նիկոլայ Ալեքսանդրովիչ (1842—1907), ռուս քիմիկոս: Ավարտել է Պետերբուրգի համալսարանը (1862): Պետերբուրգի համալսարանի (1869—1902) և պոլիտեխնիկական ինստ-ի (1902—07) պրոֆեսոր: Մ-ի աշխատանքները վերաբերում են օրգ. միացությունների քիմ. փոխարկումների կինետիկային: Մ. բացահայտել է (1887—90) լուծիչի, ինչպես նաև նոսրացման ու քիմ. կառուցվածքի ազդեցությունը քիմ. փոխազդեցության արագության վրա: Քիմ. կինետիկայի բնագավառում կատարած աշխատանքների համար Մ. արժանացել է Լոմոնոսովի անվ. մրցանակի (1904):

*Երկ.* Очерк развития химических воззрений, 1888.

**ՄԵՆՈՏՏԻ** (Menotti) Ջան Կարլո (ծն. 7.7.1911, Կադելիանո, Իտալիա), ամերիկյան կոմպոզիտոր: Ազգությամբ՝ իտալացի: Սովորել է մոր մոտ (10 տարեկանում գրել է առաջին օպերան), այնուհետև՝ Միլանի կոնսերվատորիայում (1923—27): 1928-ից ապրում է ԱՄՆ-ում: Կատարելագործվել (1928—33), իսկ 1941-ից դասավանդում է (կոմպոզիցիա և երաժշտական դրամատուրգիա) Ֆիլադելֆիայի Կյորտիս երաժշտական ինստ-ում: Մ. բազմաթիվ օպերաների հեղինակ է (շատերն իր բեմադրությամբ ներկայացվում են ԱՄՆ-ում): Մ-ի երաժշտական ոճը էկլեկտիկ է, զուգորդում է իտալ. *վերիզմի* ավանդույթները ամերիկյան երաժշտական դրամատուրգիայի ժամանակակից հնարների հետ: Լավագույն օպերաներից են՝ «Ամելիան գնում է պարահանդես» (1936, Ֆիլադելֆիա), «Մեդիում» (1946, Նյու Յորք), «Հեռախոս» (1947, Նյու Յորք), «Հյուպատոսը» (1950): Գրել է նաև բալետ, օրատորիա, սիմֆոնիկ պոեմ, ջութակի և դաշնամուրի կոնցերտներ, դաշնամուրային երկեր:

**ՄԵՆՑԵԼ** (Menzel) Ադոլֆ ֆոն (1815, Բրեսլաու, այժմ՝ Վրոցլավ, Լեհաստան —1905, Բեռլին), գերմանացի գեղանկարիչ և գրաֆիկ: Վիմագրություն է սովորել հոր մոտ, 1830-ին՝ Բեռլինի Գեղարվեստի ակադեմիայում: Ֆ. Կուգլերի «Ֆրիդրիխ Մեծի պատմության» լուսաստվերային էֆեկտներով հարուստ նրա նկարազարդումները (1839—42), ինչպես և Ֆրիդրիխ II-ի կյանքի պատկերները («Ֆրիդրիխ II-ի համերգը Սան-Սուսիում», 1852, Ազգային պատկերասրահ, Բեռլին) XVIII դ. Պրուսիայի առօրյա կյանքի արտացոլումն են: Լույսով և օդով հագեցած 1840-ական թթ. նրա նկարները («Պատշգամբով սենյակը»,



Ա. Մենցել

1845, «Ունեն իներով շինարարական հրապարակը», 1846, երկուսն էլ՝ Ազգային պատկերասրահ, Բեռլին) կանխորոշել են XIX դ. 2-րդ կեսի եվրոպական ռեալիստական երփնագրի զարգացման ուղիները (մոտիվի ընտրություն, կոմպոզիցիայի հատվածություն, վայլորների հարստություն են): «Հարգանք մարտյան օրերին զոհվածներին» (1848, Կունստհալլե, Համբուրգ) նկարում Մ. անդրադարձել է 1848-ի հեղափոխությանը: Մ-ի արվեստի դեմոկրատիզմը արտահայտվել է նաև ժանրային («Ժիմնազ թատրոնը», 1856, Ազգային պատկերասրահ, Բեռլին), ժողովրդի կյանքն ու աշխատանքը պատկերող գործերում («Շինարարությունում», 1875, մասնավոր հավաքածու, Բեռլին են): «Երկաթաձուլման գործարան»-ը (1875, Ազգային պատկերասրահ, Բեռլին) եվրոպական գեղանկարչությունում ինդուստրիալ նվիրված աշխատանքի առաջին պատկերումն է: Մ. նաև գծանկարների (5 հզ. ավելի), ջրանկրի, գուաշի, օֆորտի և վիմագրության վարպետ է:



Ա. Մ ե ն ց ե լ. «Պատշգամբով սենյակը» (1845, Ազգային պատկերասրահ, Բեռլին)

**ՄԵՆՈՒԱ**, Մ ի ն ու ա (ծն. թ. անհտ.— մ. թ. ա. մոտ 786), *Ուրարտուի* թագավոր մ. թ. ա. մոտ 810-ից: *Իշփուինիի* որդին, գահակիցը և հաջորդը: Իշփուինիի և Մ-ի համատեղ թագավորության տարիներին Ուրարտուի սահմանները ընդարձակվել են (հվ-արլ-ում հասնելով մինչև Մանա և Բարշուա երկրները, մոտենալով Ասորեստանի արլ. սահմաններին): Մ-ի միանձնյա թագավորության օրոք Ուրարտուն ապրել է ռազմաքաղաքական վերելք: Կենտրոնական և ծայրամասային մարզերում՝ Վանա լճի շրջակայքում, Արածանիի և Արաքսի վերին հոսանքներում, Կարինի (Էրզրումի) դաշտում Մ. կառուցել է բազմաթիվ ամրոցներ (ինչպես նաև տաճարներ): Դա հնարավորություն է տվել ապահովելու պետության անվտանգությունը, հաստատվելու նվաճված երկրներում և հետագա արշավանքներով գրավելու նոր շրջաններ: Հս-ում Մ. հասել է Կարսի շրջան, Ճորոխի ավազան և Արարատի հս. ստորոտները (որտեղ, Արաքսի աջ ափին, կառուցել է *Մենուախինիլի* քաղաք-ամրոցը): Դիաուխի (հայկ. Տայք), Էթիունի, Էրիկուախի և այլ երկրների դեմ տարած հաղթանակները զգալիորեն ամրապնդել են Ուրարտուի դիրքերը հս-ում: Այնուհետև Մ. ռազմ. գործողություններ է ծավալել արմ-ում և հվ-արմ-ում՝ Ծուփանի-Ծոփքում, Ալզի-Աղձնիքում, անդրեփրատյան Մելիտեա-Մալաթիայում: Մ. ստեղծել է ոռոգման լայն ցանց: Ոչ միայն Ուրարտուում, այլ Հին Արևելքում ուրույն տեղ է գրավել Մ-ի կառուցած վիթխարի ջրանցքը՝ շուրջ 80 *կմ* երկարությամբ, որը խմելու և ոռոգելու ջուր է մատակարարել (այժմ էլ գործում է) Ուրարտուի մայրաքաղաք Տուշպա-Վանին: Մ. ջրանցքներ է անցկացրել նաև Վանա լճի հս., հվ. ու արլ. ավազաններում և հարակից շրջաններում:

*Գրկ.* Ղ ա փ ա ն ց յ ա ն Գ., Ուրարտուի պատմությունը, Ե., 1940: Մ е л и к и ш в и л и Г. А., Наири-Урарту, Тб., 1954; П и о т р о в с к и й Б. Б., Ванское царство (Урарту), М., 1959; А р у т ю н я н Н. В., Биайнили (Урарту), Е., 1970.

*Ն. Հարությունյան*

**ՄԵՆՈՒԱԽԻՆԻԼԻ**, ուրարտական բերդաքաղաք, ռազմական, վարչատնտեսական և մշակութային կենտրոն: Կառուցել է *Մենուա* թագավորը (մ. թ. ա. 810—786) Մեծ Մասիսի հս. ստորոտին, Երասխ (Արաքս) գետի աջ ափին (այժմյան Դաշբուրուն գյուղի մոտակայքում):

Մ. դարձել է Հայկական լեռնաշխարհի հս. շրջանները ուրարտ. պետության մեջ միավորելու հենակետ: Մ-ի շրջակայքում գտնված երեք արձանագրությունները պատմում են Էրիկուախի երկրի գրավման, Մ-ի հիմնադրման ու Խալդիի տաճարի կառուցման մասին: Հուշարձանախումբը ուսումնասիրել են Մ. Վ. *Նիկոլսկին*, Ա. Ա. Իվանովսկին:

Համանուն մի այլ քաղաք Մենուան կառուցել է Վանա լճի հվ. ափին (հիշատակված է Աղթամարի ջրանցքի շինարարության մասին արձանագրության մեջ):

*Գրկ.* И в а н о в с к и й А. А., По Закавказью, «Материалы по археологии Кавказа», в. 6, М., 1911.

*Ս. Հմայակյան*

**ՄԵՆՈՒԱՅԻ ՋՐԱՆՑՔ**, Մ ի ն ու ա յ ի ջ ր ա ն ց ք, Շ ա մ ի ր ա մ ի ջ ր ա ն ց ք, Ուրարտուի հիդրոտեխնիկական խոշոր կառույց: Կառուցել է *Մենուա* թագավորը, հավանաբար, մ. թ. ա. IX դ. վերջին կամ VIII դ. սկզբին՝ Տուշպա (Վան) մայրաքաղաքին խմելու և ոռոգելու ջուր մատակարարելու համար: Երկարությունը 80 *կմ*

է, լայնությունը՝ 4,5 *մ*, խորությունը՝ 1,5 *մ*, ջրի հոսանքի արագությունը՝ 3 *մ/վրկ*: Այն սկիզբ է առնում Հայոց Ձոր գավառի հվ. կողմում, Վերին Մժնկերտ գյուղի մոտ, ուր ժայռաշղթայի տակից բխում են ջրառատ բազմաթիվ աղբյուրներ: Այստեղ նրա ջրերով աշխատում են



Հատված Մենուայի ջրանցքի պատի շարվածքից

40 ջրաղացներ: Մ. ջ-ից ճյուղավորվում են բազմաթիվ մանր ջրանցքներ ու առուներ, որոնք ոռոգում են ընդարձակ տարածություններ Վանա լճի արլ. ափին: Մ. ջ-ի տնտ. նշանակությունը այնքան մեծ է եղել, որ նրա պահպանման համար կառուցվել են ամրոցներ: Ջրանցքն այժմ ոռոգում է 25 գյուղերի ցանքատարածություններ ու այգիներ: Սկսած Ներքին Մժնկերտ գյուղի մոտից (ուր գտնվում է ջրանցքի կառուցման վերաբերյալ առաջին արձանագրությունը) Մ. ջ-ի երկարությամբ տեղադրված են ուրարտ. 14 արձանագրություն: Մ. ջ. իր չափերով ու նշանակությամբ խոշորագույններից է ոչ միայն Ուրարտուի, այլև Հին Արևելքի ոռոգման համակարգում:

Ըստ առասպելաբանության (որը պահպանվել է Մովսես Խորենացու «Պատմություն Հայոց» երկում և ժող. բանահյուսության մեջ) Մ. ջ-ի կառուցումը վերագրվել է Ասորեստանի Շամիրամ թագուհուն և անվանվել Շամիրամի ջրանցք:

*Գրկ.* Տեր-Ավետիսյան Ս., Ուրարտական թագավոր Մենուաս Առաջինի կառուցած Շամիրամի ջրանցքը, «Տեղեկագիր ՍՍՌՄ ԳԱ հայկ. ֆիլիալի», 1941, № 3—4: Пиотровский Б. Б., Ванское царство, (Урарту), М., 1959; Арутюнян Н. В., Земледелие и скотоводство Урарту, Е., 1964.

*Գ. Աբգարյան*

**ՄԵՆՈՒԵՏ** (ֆրանս. menuet, < menu — փոքր, մանր), ֆրանսիական պար: Առաջացել է Պուատու գավառի ժող. պարերգերից: XVII դ. դարձել է պալատական պարահանդեսների հիմնական պարերից մեկը: Չափը եռամաս է: Կատարվում է սահուն քայլերով, հանդիսավորությամբ, շարժումները կազմված են հիմնականում խոնարհի ողջույններից ու ռևերանսներից: XVIII դ. Մ. փոփոխություններ է կրել, արագացել է տեմպը, բարդացել շարժումները, օգտագործվել են նաև ցատկեր, պարել են մի քանի զույգերով: XVII դարից մուտք է գործել օպերա-բալետային ստեղծագործությունների մեջ: Տարածված և ընդունված է եղել Արևմտյան Եվրոպայում, XVIII դարից՝ Ռուսաստանում: Մ. որպես նվագարանային երաժշտության ինքնուրույն ձև, տարբեր կոմպոզիտորների կողմից օգտագործվել է պարային սյուիտներում (Յո. Ս. Բախ, Գ. Ֆ. Հենդել), սոնատներում, կվարտետներում, սիմֆոնիաներում (Յո. Հայդն, Վ. Ա. Մոցարտ, Լ. Բեթհովեն) և այլ ստեղծագործություններում (Պ. Չայկովսկի, Ս. Պրոկոֆև, Կ. Դեբյուսի, Մ. Ռավել, Բ. Բարտոկ և ուրիշներ):

*Ժ. Խաչատրյան*

**ՄԵՆՈՒՀԻՆ** (Menuhin) Իեհուդի (ծն. 22.4. 1916, Նյու Յորք), ամերիկյան ջութակահար: Ջութակ նվագել սովորել է 4 տարեկանից՝ Զ. Անկերի մոտ: Կատարելագործվել է Շվեյցարիայում՝ Ա. Բուշի, Ռումինիայում և Ֆրանսիայում՝ Ջ. Էնեսկուի մոտ: Մ. արդի խոշորագույն ջութակահարներից է: Համերգացանկում տեղ են գրավում դասական, նաև ժամանակակից կոմպոզիտորների (Ու. Ուոլտոն, Ջ. Էնեսկու, Է. Բլոխ) երկեր: Եղել է ՅՈՒՆԵՍԿՕ-ի Միջազգային երաժշտական խորհրդի պրեզիդենտ (1971—75): Հանդես է եկել աշխարհի շատ երկրներում (ՍՍՀՄ-ում առաջին անգամ՝ 1945-ին): Ելույթ է ունենում քրոջ՝ դաշնակահարուհի Հեֆցիբա Մ-ի (ծն. 20.5.1920, Սան Ֆրանցիսկո) հետ:

**ՄԵՇԱՔԵՆԴ** (մինչև 1978-ը՝ Ցանըղփայա), գյուղ Հայկական ՍՍՀ Կրասնոսելսկի շրջանում, շրջկենտրոնից 33 *կմ* հյուսիս-արևմուտք: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև



Մեշաքենդ

կերային կուլտուրաների, ծխախոտի մշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, գրադարան, կինո, բուժկայան:

**ՄԵՇՉԱՆԻՆՈՎ** Իվան Իվանովիչ (1883—1967), սովետական լեզվաբան, հնագետ: Փոքր Ասիայի և Կովկասի մեռած լեզուների, հատկապես ուրարտ. (խալդերենի) մասնագետ: ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս (1932), սոցիալիստական աշխատանքի հերոս (1945): Եղել է ՍՍՀՄ ԳԱ լեզվի և մտածողության ինստ-ի դիրեկտոր (1935—1950), գրականության և լեզվի բաժանմունքի ակադեմիկոս քարտուղար (1934—50) և ՍՍՀՄ ԳԱ Նախագահության անդամ:

1926—31-ին հնագիտական պեղումներ է կատարել հս. մերձսևծովյան շրջաններում և Անդրկովկասի տարբեր վայրերում (Լեռնային Ղարաբաղ, Նախիջևան, Կիրովաբադ): Նրա գիտական հայացքների ձևավորման վրա զգալի ազդեցություն է ունեցել Ն. Յա. *Մառը*: Մ. սկզբնավորել է տարբեր համակարգ ունեցող լեզուների շարահյուսության տիպաբանությունը, քննել է լեզուների զարգացման հիմնական փուլերը, ստեղծել լեզուների շարահյուսության տիպաբանության տեսություն, մշակել նախադասության տեսության խնդիրները: Մեծ են Մ-ի ծառայությունները Հյուսիսի և Կովկասի գիր չունեցող ժողովուրդների լեզուների ուսումնասիրությունը կազմակերպելու գործում: ՍՍՀՄ պետ. մրցանակի դափնեկիր (1943, 1946): Պարգևատրվել է Լենինի և այլ շքանշաններով:

*Երկ.* Эламские древности, П., 1917; Халдоведение. История древнего Вана, Баку, 1927; Язык Ванской клинописи, Л., 1935; Общее языкознание, Л., 1940; Члены предложения и части речи, М.—Л, 1945; Грамматический строй урартского языка, ч. 1—2, Л., 1958—62; Эргативная конструкция в языках различных типов, Л., 1967.

*Ս. Մարության*

**ՄԵՇՉԵՐՍԿԻ** Իվան Վսեվոլոդովիչ (1859—1935), սովետական մեխանիկ: Ավարտել է Պետերբուրգի համալսարանը (1882), 1890-ից՝ մեխանիկայի ամբիոնի դոցենտ: 1902-ից՝ Պետերբուրգի (այնուհետև Լենինգրադի) պոլիտեխնիկական ինստ-ի տեսական մեխանիկայի ամբիոնի վարիչ: Աշխատանքները վերաբերում են փոփոխական զանգվածով մարմինների մեխանիկայի հարցերին և կազմում են ռեակտիվ տեխնիկայի, երկնային մեխանիկայի պրոբլեմների մշակման տեսական հիմքը: Կազմել է «Տեսական մեխանիկայի խնդիրների ժողովածու»-ն (1911, հայ. հրտ. «Տեսական մեխանիկայի խնդիրներ», 1971), որը բազմիցս հրատարակվել է ՍՍՀՄ-ում և արտասահմանում:

**ՄԵՇՉՈՐԱՅԻ ԴԱՇՏԱՎԱՅՐ**, Մեշչորայի ցածրավայր, գտնվում է Կլյազմա, Մոսկվա, Օկա, Սուդոգդա և Կոլպ գետերի միջև, Մոսկվայի, Ռյազանի և Վլադիմիրի մարզերի սահմաններում: Ալյուվիալ հարթավայր է՝ 80—130 *մ* բարձրությամբ: Չորրորդական սառցապատման հալոցքային ջրերի և գետերի գործունեության հետևանք է: Կլիման չափավոր ցամաքային է: Գետերը դանդաղահոս են, հովիտները ճահճացած: Կան շատ լճեր ու ճահիճներ: Հողերը պոդզոլային են: Տարածքի 50%-ից ավելին ծածկված է խառն անտառներով (ավազուտները՝ սոճուտներով), Կլյազմայի և Օկայի հովիտները՝ մարգագետիններով: Արդյունահանվում է տորֆ, քվարցային ավազ: Մ. դ-ում տարվում են ճահիճների չորացման աշխատանքներ: Կա մսակաթնատու անասնապահություն և թռչնաբուծություն:

**ՄԵՇՏՐՈՎԻՉ** (Meštrović) Իվան (15.8. 1883, Վրպոլե —16.1.1962, Սաութ Բենդ, ԱՄՆ), խորվաթ քանդակագործ: 1901—1904-ին սովորել է Վիեննայի գեղարվեստի ակադեմիայում, 1903-ից մասնակցել «Վիեննական Սեցեսսիոնի» ցուցահանդեսներին: 1941-ին ձերբակալվել է *ուստաշների* ոստիկանության կողմից: 1942-ից ապրել է Հարավսլավիայի սահմաններից դուրս, 1947-ից՝ ԱՄՆ-ում: Կրել է Օ. Ռոդենի, է. Ա. Բուրդելի և «մոդեռն» ոճի ազդեցությունը, ձգտել է ստեղծել ազատագրական գաղափարներով տոգորված ազգային արվեստ [*Կոսովոյի ճակատամարտ 1389*-ին նվիրված տաճարի (չի իրագործվել) քանդակները, մարմար, բրոնզ, գիպս, 1907—12, մեծ մասը Ժողովրդական թանգարանում, Բելգրադ]: Ջրաղվելով արվեստների համադրման խնդիրներով, հանդես է եկել նաև որպես ճարտարապետ (Գեղեցիկ արվեստների տուն, այժմ՝ Ժողովրդական հեղափոխության թանգարան Զագրեբում, 1934—38):


Ի. Մեշտրովիչ. «Մայրը» (1908, ժողովրդական թանգարան, Բելգրադ)

Սպլիտում է Մ-ի պատկերասրահը, Զագրեբում՝ տուն-թանգարանը:

*Գրկ.* Тупицын И. К., Иван Мештрович, М., 1967.

**ՄԵՇՏՈՒՃՅԱՆ** Վարդան (Վիկտոր) Գևորգի (1869—1942), ռումինահայ հրապարակախոս, մանկավարժ, գրող, պատմաբան, թարգմանիչ: Սովորել, ապա դասավանդել է Կ. Պոլսի Ենի Գափու թաղամասում՝ հոր բացած «Մեշտուճյան վարժարանում»: 1890-ական թթ. կեսին, հետապնդվելով թուրք. ոստիկանությունից, անցել է Բուլղարիա, 1896—97-ին աշխատակցել «Իրավունք» թերթին, 1898-ին գրող Երուխանի հետ հիմնադրել *«Շարժում»* թերթը: 1899-ին տեղափոխվել է Բուխարեստ: 1906-ին հրատարակել է *«Աւրորա»*, 1924—42-ին՝ *«Արարատ»* ռում. հայագիտական ամսագրերը: Եղել է 1920-ին Բուխարեստում վերաբացված «Միաբայան ազգային վարժարանի» տնօրենը, հայ գաղթականների հարցով զբաղվող «Ռումինիայի հայերի միության» ընդհանուր քարտուղարը, ապա՝ տնօրենը:

Մ. հրապարակել է ռում. «Նախազծեր և ֆիլմեր» (1913) պատմվածքների ժողովածուն, «Ջետտա» (1916) վեպը, «Բուխարեստ-Սահարա» (1913), «Երուսաղեմ» (1914) ուղեգրությունները, «Հայոց պատմություն» (հ. 1—2, 1923—26) պատմաքննական երկը: Ռում. է թարգմանել Հ. Ջոհրաբյանի «Հայ եկեղեցու պատմությունը քրիստոնեության մուտքից մինչև մեր օրերը» (1934), «Հայկական պատարագը» (1937), կազմել և թարգմանել «Հայ բանաստեղծների փոքր ժողովածու»-ն (1934): Ֆրանսերենից ռում. է թարգմանել Վ. Հյուգոյի «Թշվառները» (1913), Գ. դը Մոպասանի նովելներից:

*Ս. Քոլանջյան*

**ՄԵՈՐԴԻՎԼԻՎԱՔ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի համանուն գավառում: 1909-ին ուներ 18 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին, Կամախի կիրճում:

**«ՄԵՈՐԵ-ԴԱՍԻ»** (վրաց. «Երկրորդ խումբ»), հասարակական-գաղափարական հոսանք Վրաստանում XIX դ.: 1877-ին անջատվել է միասնական դեմոկրատական այսպես կոչված թերգդալեուլիների (վրաց. վաթսունականների) հոսանքից: Մեորեդասական էին Ն. Նիկոլաձեն, Գ. Ծերեթելին, Ս. Մեսխին, Օ. Բաքրաձեն և ուրիշներ, որոնք շատ հարցերում կողմնակից էին ուտոպիստ-սոցիալիստների և ռուս. հեղափոխական-դեմոկրատների գաղափարներին, դեմոկրատական դիրքերից քննադատում էին կապիտալիզմի բացասական կողմերը: Իրականում արտահայտում էին վրաց. զարգացող բուրժուազիայի շահերը: Իրենց հայացքները պրոպագանդում էին առաջադիմական թերթերի և ամսագրերի՝ «Դրոեբա», «Կվալի», «Մոամբե» էջերում:

*Գրկ.* Ратиани П. К., Грузинские шестидесятники в русском освободительном движении, пер. с груз., Тб., 1968.

**ՄԵՉՆԻԿՈՎ** Իլյա Իլյիչ [3(15).5.1845—2(15).7.1916, Փարիզ], ռուս կենսաբան, ախտաբան, էվոլյուցիոն սաղմնաբանության, իմունոլոգիայի հիմնադիրներից: Պետերբուրգի ԳԱ թղթակից անդամ (1883-ից), պատվավոր անդամ (1902-ից): 1864-ին ավարտել է Խարկովի համալսարանը, մասնագիտացել Գերմանիայում, Իտալիայում ուսումնասիրել անողնաշարավոր կենդանիների սաղմնաբանությունը: 1870—82-ին եղել է Օդեսայի Նովոռոսիյսկյան համալսարանի պրոֆեսոր: 1887-ին տեղափոխվել է Փարիզ, աշխատել Լուի *Պաստյորի* ինստ-ում, 1905-ից ինստ-ի դիրեկտորի տեղակալ: Նամակագրական կապի մեջ է եղել Կ. Տիմիրյազևի, Ի. Սեչենովի, Ի. Պավլովի, Դ. Մենդելեևի և ուրիշ խոշոր գիտնականների հետ: 1866—86-ին մշակել է համեմատական և էվոլյուցիոն սաղմնաբանության հարցերը (Ա. *Կովալևսկու* հետ): 1883-ին հայտնաբերել է *ֆագոցիտոզի* երևույթը, հետագայում տվել *իմունիտետի* ֆագոցիտային տեսությունը (1901), որի համար


Ի. Ի. Մեչնիկով

1908-ին արժանացել է նոբելյան մրցանակի (Պ. Էրլիխի հետ): Ն. *Գամալեայի* հետ Ռուսաստանում կազմակերպել են բակտերիալոգիական առաջին կայանը (1886): Տվել է բազմաբջիջ օրգանիզմների ծագման մասին տեսությունը: Աշխատանքներ է կատարել խոլերայի, որովայնային տիֆի, տուբերկուլոզի ևն վարակիչ հիվանդությունների համաճարակագիտության բնագավառում:

Զբաղվել է նաև *ծերացման* հարցերով. գտնում էր, որ մարդ ծերանում և մահանում է բնականից վաղ, որի պատճառը օրգանիզմի ինքնաթունավորումն է մանրէային և այլ թույներով: Նշված երևույթների կանխման համար առաջարկել է մի շարք միջոցներ (սննդի վարակազերծում, մսի օգտագործման սահմանափակում, կաթնամթերքների առատ օգտագործում): Ռուսաստանում Մ. ստեղծել է մանրէաբանների, իմունոլոգների և ախտաբանների առաջին դպրոցը, ակտիվորեն մասնակցել մի շարք ԳՀԻ-ների հիմնադրմանը: Եղել է արտասահմանյան շատ ԳԱ-ների, գիտական ընկերությունների պատվավոր անդամ:

*Երկ.* Академическое собр. соч., т. 1—16, М., 1950—64.

*Գրկ.* Могилевский Б., Илья Ильич Мечников, М., 1958; Резник С. Е., Мечников, М., 1973.

**ՄԵՋԲԵՐՈՒՄ**, որևէ գրավոր աղբյուրից (երբեմն նաև բանավոր խոսքից) անփոփոխ բերված քաղվածք՝ սեփական տեսակետը հիմնավորելու նպատակով:

**ՄԵՋԻԹԼՈՒ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Բուլանըխի գավառում: 1909-ին ուներ 125 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ և արհեստներով: Մ-ի հայերը 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ գաղթել են Արևելյան Հայաստան: 1918-ին վերադարձել են հայրենի գյուղ, 1920-ին կրկին գաղթել: Բնակություն են հաստատել Արագածի լանջերի գյուղերում:

**ՄԵՋԼԻՍ** (արաբ. ժողով, խորհուրդ), Իրանի պառլամենտի ստորին պալատի անվանումը: Երբեմն էլ Մ. են կոչում Թուրքիայի պառլամենտը՝ Ազգային մեծ ժողովը:

**ՄԵՌԱԾ ԼԵԶՈՒՆԵՐ**, որպես կենդանի հաղորդակցման միջոց այլևս չգործածվող լեզուներ: Տարբերում են չորս կարգի Մ. լ.՝ 1. իրենց կրող ժողովուրդների հետ մեկտեղ պատմական ասպարեզից անհետացած լեզուներ, որոնց երբեմնի գոյության մասին կարելի է ենթադրել հարևան ժողովուրդների լեզուների վրա թողած ազդեցությամբ (իրանական որոշ լեզուներ կամ բարբառներ, որոնցից կատարված փոխառությունները պահպանվել են հայերենում): 2. Լեզուներ, որոնց անվանումները և որոշ բառեր՝ հիմնականում անձնանուններ և տեղանուններ, պահպանվել են այլ ժողովուրդների գրավոր աղբյուրներում (սկյութերեն, հայասերեն, թրակերեն ևն): 3. Լեզուներ, որոնց կրողները ոչնչացել կամ ձուլվել են այլ ժողովուրդների հետ, բայց իրենք ավանդված են բավական հարուստ գրավոր հուշարձաններով (ուրարտերեն, խեթերեն, սումերերեն, եգիպտերեն ևն): 4. Ներկայումս գոյություն ունեցող կենդանի լեզուների՝ գրավոր աղբյուրներով ավանդված ավելի հին վիճակը ներկայացնող լեզուներ, որոնք, կենդանի գործածությունից դուրս գալուց հետո, երկար ժամանակ պահպանվել են իբրև գրական լեզու (լատիներեն, սանսկրիտ, գրաբար, եկեղեցասլավոներեն ևն):

*Լ. Հովսեփյան*

**ՄԵՌԵԼՈՑ**, մեռելոց օր, հանգուցյալների հիշատակին նվիրված օրեր: Հայ եկեղեցական հինգ մեծ տոներին (հարություն, այլակերպություն ևն) հաջորդող երկուշաբթի օրերը և բուն բարեկենդանի նախընթաց վերջին ուտիք հինգշաբթին: Ննջեցյալների հիշատակին են նվիրված նաև պահոց ուրբաթները: Հայ եկեղեցում կատարվում է Մ-ին նվիրված հատուկ կարգ: Մ-ի օրերին հարազատներն օրհնել

են տալիս գերեզմանները և դրանց վրա խունկ ծխում:

*Ժ. Խաչատրյան*

**ՄԵՌՅԱԼ ԾՈՎ**, անհոսք աղի լիճ Արևմտյան Ասիայում՝ Հորդանանում և Իսրայելում: Երկարությունը 76 *կմ* է, լայնությունը՝ մինչև 17 *կմ*, խորությունը՝ մինչև 356 *մ*, մակերեսը՝ 1050 *կմ*²: Գտնվում է Գհոր տեկտոնական իջվածքում, 395 *մ* ծովի մակարդակից ցածր (ցամաքի ամենացածր մասը երկրի վրա): Միջին աղիությունը 260—270‰ է, առանձին տարիներին մինչև 310‰: Պարունակում է $MgCl_2$-ի, NaCl-ի, KCl-ի, $MgBr_2$-ի մեծ պաշարներ: Բարձր աղիության հետևանքով օրգ. աշխարհը բացակայում է (բացառությամբ մանրէների որոշ տեսակների):

Մ. ծ-ի մեջ է թափվում Հորդանան գետը: Հվ. ափին կա հանքային աղերի արդյունահանում:

**«ՄԵՌՅԱԼ ԾՈՎԻ ՁԵՌԱԳՐԵՐ»**, Մեռյալ ծովի արևմտյան ափին, քարայրերում գտնված եբրայեցերեն, արամեերեն, նաբաթեերեն, հունարեն, լատիներեն, ասորերեն ձեռագրեր: Դրանց համար նյութ են ծառայել կաշին, մագաղաթը, ինչպես նաև խեցիները, պղինձը, փայտը: Զանազան վայրերում գտնված ձեռագրերը տարբերվում են բովանդակությամբ և ստեղծման ժամանակով: Առանձնապես արժեքավոր են Վադի-Կումրան շրջանում հայտնաբերվածները (տես *Կումրանի ձեռագրեր*): Մասադա ամրոցի (Մեռյալ ծովի ափի հվ-արմ. մասում) պեղումներով (1963—1965-ին) հայտնաբերվել են եբրայեցերեն և արամեերեն (այդ թվում՝ խեցիների վրա գրված տնտ. 795 փաստաթուղթ), հուն. և լատ. ձեռագրեր, որոնք կարևոր նշանակություն ունեն նաև Կումրանի ձեռագրերի թվագրման համար: Մասադայի արխիվը դեռևս հրատարակված չէ, բացի Բեն-Սիրի պարականոն ստեղծագործությունների ձեռագրերից: Հրեական անապատի քարայրերում 1952-ին և 1960—1961-ին աստվածաշնչյային ձեռագրերի հետ գտնվել են գործնական, տնտ. և իրավաբանական փաստաթղթերի արխիվներ (եբրայեցերեն, արամեերեն, նաբաթեերեն և հուն.), որոնք լույս են սփռում Հրեաստանի և Նաբաթեայի հարաբերությունների վրա II—III դդ.: Առայժմ հրատարակված է միայն Վադի-Մուրաբբաատի արխիվը: Հերբեթ-Միրդում (Վադի-Կումրանից հվ-արմ.) 1952—53-ին հայտնաբերվել են առավելապես ասորերեն և հուն., ինչպես նաև արաբ. (IV—VIII դդ.) ձեռագրեր: Գտնված են Նոր կտակարանի և պարականոն գրականության հատվածներ, գործնական փաստաթղթեր, ինչպես և մի հատված Եվրիպիդեսի «Անդրոմաքե»-ից:

*Գրկ.* Амусин И. Д., Рукописи Мертвого моря, М., 1960; Նույնի, Находки у Мертвого моря, М., 1965; Ковалев С. И., Кубланов М. М., Находки в Иудейской пустыне, М., 1965; Discoveries in the Judaean Desert, v. 1—5, Oxf., 1955—1968; Yadin Y., The Finds from the Bar Kokhba Period in the Cave of Letters, Jerusalem, 1963; Bar-Adon P., The Cave of the Treasure. The Finds from the Caves in Nahal Mishmar, Jerusalem, 1971; La Sor W. S., Bibliography of the Dead Sea Scrolls. 1948—1957, Pasadena, 1958; Jongeling B. A., A Classified Bibliography of the Finds in Desert of Judah, 1958—1969, Leiden, 1971.

**ՄԵՌՈՆ**, տես *Մյուռոն*:

**ՄԵՌՈՒԿԱՑՈՒՄ**, նեկրոզ (< հուն. νεκρός — մահացած), կենդանի օրգանիզմում առանձին օրգանների, դրանց մասերի, հյուսվածքների կամ բջիջների մահացում: Ըստ պատճառների տարբերում են վնասվածքային (ցրտահարություն, այրվածք), նյարդա-սնուցողական (Մ. բորի նյարդային ձևի, սիրինգոմիելիայի դեպքում), շրջանառու կամ սակավարյունային (ինֆարկտ, գանգրենա), թունավոր (կազեոզ Մ. տուբերկուլոզի և սիֆիլիսի դեպքում), ալերգիական (ֆիբրինոիդ Մ. ալերգիական հիվանդությունների դեպքում): Մ-մանը բնորոշ են բջիջների և միջբջջային նյութի փոփոխությունները. կորիզը և բջջապլազման կնճռոտվում են (պիկնոզ, մակարդում), քայքայվում բեկորիկների (ռեքսիս) և լուծվում (լիզիս): Շարակցական հյուսվածքի կառուցվածքներում զարգանում են ֆիբրինոիդ փոփոխություններ, նյարդաթելերում՝ բեկորային քայքայում: Մ-ման կլինիկա-մորֆոլոգիական դրսևորումները և հետևանքները կախված են պրոցեսի տեղադրությունից և տարածվածությունից, առաջացման պայմաններից ու մեխանիզմներից: Տես նաև *Նեկրոբիոզ*:

**«ՄԵՍԱՄԵ-ԴԱՍԻ»** (վրաց. «Երրորդ դաս, խումբ»), սոցիալ-դեմոկրատական առաջին կազմակերպությունը Անդրկովկասում: Հիմնադրվել է 1892-ին, Զեստաֆոնում, որպես գրական-քաղաքական խումբ, Է. *Նինոշվիլու* և Մ. *Ցխակայայի* նախաձեռնությամբ: 1893-ին իրեն հռչակել է սոցիալիստ-մարքսիստների խումբ: Առաջին հրապարակային ելույթը կայացել է 1894-ի մայիսի 8-ին: Գրող, հասարակական գործիչ Գ. Ծերեթելին «Կվալի» թերթում կազմակերպությունն անվանեց «Մ-դ.» (առաջին խումբ՝ «Պիրվելի դասի»-ն և երկրորդ խումբ՝ *«Մեորե դասի»*-ն հեղափոխական-դեմոկրատական էին): «Մ-դ.»-ի անդամները ծանոթանում էին Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Գ. Պլեխանովի աշխատություններին և պրոպագանդում ուսանող երիտասարդության շրջանում: Կազմակերպության գործունեության կենտրոնը Թիֆլիսն էր, սակայն այն կապեր ուներ նաև Անդրկովկասի մյուս ս-դ. խմբակների հետ: Հենց սկզբից խումբը քաղաքականապես միատարր չէր: Մեծամասնությունը հակված էր դեպի *«լեգալ մարքսիզմն»* ու ազգայնականությունը, հետագայում՝ դեպի *«էկոնոմիզմը»*. հանդես էր գալիս դասակարգային պայքարի մարքսիստական ըմբռնման դեմ, դրսևորում բուրժուա-ազգայնական դիրքորոշում: Խմբի հեղափոխական մասը (Մ. Ցխակայա, Ֆ. Մախարաձե ևն) կանգնած էր պրոլետարական ինտերնացիոնալիզմի, հեղափոխության մեջ բանվոր դասակարգի ղեկավար դերի մարքսիստական դիրքերում, պայքարում էր բուրժ. լիբերալիզմի և ազգայնականության դեմ: 1895—98-ին «Մ-դ.»-ի մեջ մտան Վ. Կեցխովելին, Ի. Ստալինը, Ա. Ծուլուկիձեն և ուրիշներ: 1898-ին «Մ-դ.» մտավ ՌՍԴԲԿ-ի մեջ՝ պահպանելով իր անունը: ՌՍԴԲԿ II համագումարում (1903) «Մ-դ.»-ի օպորտունիստական թևը հարեց մենշևիկներին, իսկ հեղափոխականը կանգնեց բոլշևիկյան դիրքերում:

**ՄԵՍԵԴԻ** (հուն. μεσίτης — միջնորդ, հաշտարար, այստեղ՝ միջանկյալ սաղմոս), հայ հոգևոր երգի տեսակներից մեկը՝ երեկոյան սաղմոսերգության *կցուրդ*, որ զարգացել է VIII—XV դդ.: Մ-ները հորինվել են առաջին սաղմոսատների հիման վրա: Միջնադարյան խազգրքերում պահպանվել են Մ-ների մի քանի շարքեր: Մ-ների առաջին հեղինակը, ամենայն հավանականությամբ, եղել է *Գրիգոր Գույիկ* Այրիվանեցին:

*Ն. Թահմիզյան*

**ՄԵՍԵՄԲՐԻԱ**, Մեսեմվրիա (Μεσημβρία), Նեսեբըր (Բուլղարիա) քաղաքի հին հունարեն անվանումը:

**ՄԵՍԵՏԱ** (Meseta), Իբերյան Մեսետա, սարահարթ, գրավում է Պիրենեյան թերակղզու մեծ մասը: Կենտրոնական Կորդիլիերներով (Ալմանսոր լեռ, 2592 *մ*, Մ-ի ամենաբարձր կետը) Մ. բաժանվում է Հին Կաստիլիա և Նոր Կաստիլիա սարահարթերի: Կան կապարի, պղնձի, սնդիկի, կոբալտի, երկաթի, ոսկու, անագի և վոլֆրամի հանքավայրեր: Կլիման մերձարևադարձային է, միջերկրածովյան: Խոշոր գետերն են Դուերոն, Տախոն, Գվադիանան, Մինիոն: Գերիշխում են գորշանտառային և շագանակագույն հողերը: Տարածված են մակվիսի, գարիգայի և տոմիլյարի բուսական համակցությունները, լեռներում՝ անտառները:

**ՄԵՍԻԱ** (հին եբր. մաշիաք — օծյալ), հուդայականությունում և քրիստոնեությունում (մասամբ նաև այլ կրոններում) աստծո ուղարկած «փրկիչ», որն իբր հավերժական երջանկություն պետք է պարգևի մարդկությանը: Հին կտակարանի առաջին գրքերում Մ. օգտագործված է «թագավոր», «իդեալական միապետ» իմաստներով: Հուդայի թագավորության կործանումից հետո և հատկապես հռոմ. տիրապետության ժամանակաշրջանում Մ-ի գաղափարը արտահայտել է հրեաների անկախության ձգտումը (Դավիթ թագավորի տոհմից ծնված Մ. իբր պետք է վերականգներ Հրեական թագավորությունը): Մ-ի նկատմամբ հավատը հեսսեների աղանդում կապվել է շահագործվողների սոցիալական պայքարի հետ (Մ. պետք է երջանկություն բերեր տառապյալներին): Քրիստոնեությունը Մ. է հայտարարել իր հիմնադրին՝ Հիսուսին (տես *Քրիստոս Հիսուս*): Քրիստոնեությունը Մ-ի գաղափարը զրկել է քաղ. և սոցիալական նշանակությունից, այն սահմանափակել միայն կրոնա-բարոյական իմաստով: Քրիստոնեական Մ., այսինքն՝ Հիսուս Քրիստոսը, մարդկությանը փրկում էր սոսկ «նախնական մեղքից», «սատանայի տիրապետությունից», «ցույց տալիս ուղիղ ճանապարհը»՝ մնացածը թողնելով իր «երկրորդ գալստյանը»:

Մ-ի գաղափարը, տարբեր մեկնաբանություններով, գոյություն ունի նաև մահմեդական, բուդդայական, զրադաշտական կրոններում: Ներկայումս Մ-ի նկատմամբ հավատը թուլացնում է շահագործվողների դասակարգային պայքարը:

**ՄԵՍԻԱՅԱՆ** Հայկազ Կոստոսի (ծն. 8.1.1917, Սեբաստիա), հայ փողհար, դիրիժոր, մանկավարժ: ՀՍՍՀ վաստ. արտիստ (1962): 1947-ին ավարտել է Մոսկվայի կոնսերվատորիան (պրոֆ. Տաբակովի դասարան): 1938—42-ին, 1945—47-ին եղել է ՍՍՀՄ Մեծ թատրոնի և Համամիութենական ռադիոյի սիմֆո-ջազի, 1947—60-ին՝ Հայաստանի սիմֆոնիկ նվագախմբի, Երևանի օպերայի և բալետի թատրոնի մենակատար: 1964-ից՝ «Երևան» փողային նվագախմբի (1970-ից՝ Հայաստանի պետ. փողային նվագախումբ) գեղարվեստական ղեկավար և գլխավոր դիրիժոր: 1966-ից դասավանդում է Երևանի Կոմիտասի անվ. կոնսերվատորիայում (կամերային անսամբլի դասարան, դոցենտ՝ 1977-ից): Մ. համամիութենական երաժիշտ-կատարողների մրցույթի դիպլոմանտ է (1941, Մոսկվա):

*Ա. Ազուլյան*

**ՄԵՍԻՆԱՅԻ ՆԵՂՈՒՑ**, գտնվում է Ապենինյան թերակղզու և Սիցիլիա կղզու միջև: Միացնում է Հոնիական և Տիրենյան ծովերը: Երկարությունը մոտ 40 *կմ* է, լայնությունը՝ 3,5—22 *կմ*, նվազագույն խորությունը՝ 115 *մ*: Հայտնի է ուժեղ ջրապտույտներով: Նավահանգիստներն են Մեսինան և Ռեջո դի Կալաբրիան:

**ՄԵՍԽԵԹ**, մեսխերի (վրացական ցեղերից մեկի) երկիրը, Հարավային Վրաստանի մի մասի պատմական անվանումը: XIII դ. 2-րդ կեսից Մ. մտել է Սամցխե—Սաաթաբագո իշխանության մեջ: XVI դ. այն նվաճել է Թուրքիան: 1829-ին. Ադրիանուպոլսի հաշտության պայմանագրով, Մ-ի հս. մասը միացել է Ռուսաստանին:

**ՄԵՍԽԵԹԻ ԼԵՌՆԱՇՂԹԱ**, Աջարա-Իմերեթյան լեռնաշղթա, Փոքր Կովկասի լեռնաշղթաներից Վրացական ՍՍՀ-ում: Ձգվում է Սև ծովի աջարական ափից մինչև Կուր գետի Բորժոմի կիրճը: Երկարությունը 150 *կմ* է, բարձրությունը՝ մինչև 2850 *մ* (Մեփիսծղարո լեռ): Կազմված է ֆլիշային և հրաբխածին նստվածքային ապարներից: Գագաթը ծածկված է լեռնային մարգագետիններով, լանջերը՝ լայնատերև և փշատերև անտառներով:

**ՄԵՍՅԱՆ** Գևորգ Մնացականի [1883, Դաղեթ Խաչեն (այժմ՝ Վրացական ՍՍՀ Թեթրի Ծղարոյի շրջանում)—1937], հայ սովետական մանկագիր, թարգմանիչ: Նախնական կրթությունն ստացել է Թիֆլիսի հայկ. հոգևոր սեմինարիայում: 1909—1915-ին սովորել է Պետերբուրգի նյարդահոգեբանական ինստ-ում: 1911-ին լույս է տեսել Մ-ի առաջին գիրքը՝ «Ջարի» պոեմը: Այնուհետև «Մարտակոչ», «Պրոլետար», «Կարմիր ծիլեր», «Լուսաբաց», «Արշավ» պարբերականներում տպագրվել են հայ գյուղին նվիրված նրա պատմվածքները, ակնարկները, պոեմներն ու բանաստեղծությունները: Հրատարակվել են Մ-ի «Պատմվածքներ» (1931), «Մենք ենք կառուցում» (1933), «Պիոներ Գարիկի հիշատակարանը» (1936) գրքերը և այլ գործեր: Թարգմանել է ռուս և արևմտաեվրոպական մի շարք դասական գրողների երկեր:

*Երկ.* Մեր ծիծեռնակները, Ե., 1961:

*Վ. Մաղալյան*

**ՄԵՍՉՅԱՆ** Ստեփան Ռուբենի (ծն. 9.10.1922, Ախալցխա), հայ սովետական մեխանիկ: Տեխ. գիտ. դ-ր (1965), պրոֆեսոր (1969): ՍՄԿԿ անդամ 1946-ից: Ավարտել է Թբիլիսիի Վ. Ի. Լենինի անվ. երկաթուղային տրանսպորտի ինժեներների ինստ-ը (1944): Մասնակցել է Գյումուշի ՀԷԿ-ի շինարարությանը (1946—53): 1953-ից գիտ. աշխատակից ՀՍՍՀ ԳԱ շինանյութերի և կառուցվածքների, մաթեմատիկայի և մեխանիկայի, մեխանիկայի ինստ-ներում: 1968-ից Երևանի համալսարանի ընդհանուր և կիրառական երկրաբանության ամբիոնի պրոֆեսոր: Աշխատությունները վերաբերում են կավային բնահողերի ռեոլոգիայի՝ սողքի, լարումների ռելաքսացիայի և տևական ամրության հարցերին: Մ. կավային բնահողերի փորձառական ռեոլոգիայի հիմնադիրներից է: Ընտրվել է «Բնահողերի մեխանիկայի և հիմքաշինության» (1964), «Ինժեներ երկրաբանների» (1977) միջազգային գիտական կազմակերպությունների անդամ:

*Երկ.* Ползучесть глинистых грунтов, Е., 1967; Механические свойства грунтов и лабораторные методы их определения, М., 1974; Начальная и длительная прочность глинистых грунтов, М., 1978.

**ՄԵՍՍԱ** (իտալ. messa, < ուշ լատ. missa, < լատ mitto — հղել, ներել), վոկալ-խմբերգային (հաճախ՝ մեներգիչներով) կամ վոկալ-գործիքային բազմամաս երաժշտական ստեղծագործության ժանր, *լիթուրգիայի*՝ կաթոլիկական եկեղեցու կողմից ընդունված անվանումը (համապատասխան է ուղղափառ եկեղեցու *պատարագին*): Մ-ի կազմն ու արարողության կարգը ստեղծվել են դարերի ընթացքում: Սիմվոլիկ իմաստը կապված է հացն ու գինին Հիսուսի մարմին ու արյուն դարձնելու ծեսի հետ: Սկզբում եղել է միաձայն, XIV դարից՝ բազմաձայն (Գիյոմ դե Մաշո) և ցիկլային: Մասերի քանակն ու հաջորդման կարգը հաստատվել է Տրիդենտյան տիեզերական ժողովում (1545—63). Վատիկանի 2-րդ տիեզերական ժողովը (1962—65) թույլատրել է արարողությունը վարել ոչ միայն լատ., այլ նաև տեղական լեզուներով: Մ-ի 5 հիմնական մասերն են Kyrie eleison (Տեր ողորմեա), Gloria (Փառք ի բարձունս), Credo (Հավատամք), Sanctus (Սուրբ) և Benedictus (Օրհնեալ է), Agnus Dei (Գառն Աստծո): Տարբերում են կ ա ր ճ Մ. (missa brevis)՝ 2—3-մասանի, և հ ա ն դ ի ս ա վ ո ր Մ. (missa solemnis), որի մասերը բաղկացած են առանձին, այդ թվում՝ Քրիստոսի մարմնառությանը («Et incarnatus»), խաչելությանը («Crucifixus»), հարությանը («Et resurrexit») վերաբերող և այլ բաժիններից: Վերածնության դարաշրջանում Մ. երաժշտական ստեղծագործության առավել մոնումենտալ ժանրն էր: Մ-ներ են գրել Գ. Դյուֆային, Ժոսքեն Դեպրեն, Օ. Լասսոն, Պալեստրինան: Առանձնապես բարձր գնահատելի են Յո. Ս. Բախի սի-մինոր «Բարձր Մ.» (24 մասից), Մոցարտի դո-մինոր «Մեծ Մ.» (18 մասից), Բեթհովենի ռե-մաժոր «Հանդիսավոր Մ.» («Missa solemnis»): Սրանցում Մ-ի ժանրը վճռականապես հեռացել է կրոնական-հոգևոր երաժշտությունից և ձեռք բերել խորապես մարդկային բովանդակություն: Հոգեհանգստյան Մ. կոչվում է *ռեքվիեմ*:

*Գրկ.* Иванов-Борецкий М. В., Очерк истории мессы, М., 1910; Фишман Н. Л., «Торжественная месса» Бетховена, в изд.: Л. Бетховен. Торжественная месса, М., 1970; Друскин М. С., Пассионы и мессы И. С. Баха, Л., 1976; Wagner P., Geschichte der Messe, Bd 1, 2, Lpz., 1913.

*Մ. Տերյան*

**ՄԵՍՍԻԱՆ** (Messiaen), Օ լ ի վ ի ե, Էժեն Պրոսպեր Շառլ (ծն. 10.12.1908, Ավինյոն), ֆրանսիացի կոմպոզիտոր, երգեհոնահար, մանկավարժ: Բանաստեղծուհի Սեսիլ Սովաժի որդին: 1930-ին ավարտել է Փարիզի կոնսերվատորիան: 1936-ին կոմպոզիտորներ Ա. Ժոլիվեի, Դ. Լեսյուրի, Ի. Բոդրիեի հետ ստեղծել է «Երիտասարդ Ֆրանսիա» ստեղծագործական միությունը: 1942-ից՝ Փարիզի կոնսերվատորիայի պրոֆեսոր (աշակերտներից են՝ Պ. Բուլեզը, Կ. Շտոկհաուզենը, Յա. Քսենակիսը): Մ-ի ստեղծագործությունը ներթափանցված է աստվածաբանական-միստիկական գաղափարներով: Լայնորեն կիրառում է ժամանակակից արտահայտչամիջոցներ՝ բարդ լադային կառուցվածքներ և ռիթմական համակարգեր: Իր ստեղծագործական որոնումները Մ. հիմնավորում է տեսականորեն՝ «Իմ երաժշտական լեզվի տեխնիկան» (հ. 1—2, 1944) գրքում: Հոդվածների, դասագրքերի հեղինակ է: Ելույթներ է ունենում որպես դաշնակահար և երգեհոնահար:

*Գրկ.* Шнеерсон Г. М., Французская музыка XX века, 2 изд., М., 1970; О творчестве и теории Мессиана, «Советская музыка», 1965, № 10; Mari P., O. Messiaen, [P., 1965].

**ՄԵՍՍԻՆԱ** (Messina), քաղաք և նավահանգիստ Իտալիայում, Սիցիլիա կղզու հյուսիս-արևելքում: Մեծությամբ և տնտ. նշանակությամբ երկրորդ քաղաքն է կղզում (Պալերմոյից հետո), 263 հզ. բն. (1975): Կա քիմ., սննդի, կարի, փայտամշակման արդյունաբերություն, նավաշինություն և նավավերանորոգում: Ունի համալսարան (1548-ից), կենսաբանական, ծովային ինստ-ներ, բուսաբանական այգի: Հաճախակի են երկրաշարժերը: Պահպանվել են XII—XVI դդ. ճարտ. հուշարձաններ: Հիմնադրվել է մ. թ. ա. մոտ 730-ին:

**ՄԵՍՏՆԻԿՈՎ** Վասիլի Վասիլևիչ (1908, Յակուտսկ —1958, Յակուտսկ), յակուտ սովետական ռեժիսոր և դերասան: ՍՍՀՄ ժող. արտիստ (1958): ՍՄԿԿ անդամ 1943-ից: 1931—34-ին սովորել է Մոսկվայի թատերարվեստի ինստ-ում: 1952-ից աշխատել է Յակուտական թատրոնում (այժմ՝ Պ. Ա. Օյունսկու անվ. Յակուտական երաժշտա-դրամատիկական թատրոն), 1935—38-ին և 1942—43-ին եղել է գեղարվեստական ղեկավարն ու գլխավոր ռեժիսորը: Լավագույն բեմադրություններից են՝ Սիվցևի «Նյուրգուն Բոոթուր» (1940), Կոռնեյչուկի «Մակար Դուբրավա» (1951), Ա. Օստրովսկու «Տաղանդներ և երկրպագուներ» (1952): 1946—1948-ին Յակուտական երաժշտական թատրոնի ստուդիայում աշխատել է իբրև ռեժիսոր, ուր բեմադրել է Ժիրիկովի և

Լիտինսկու «Նյուրգուն Բոոտուր» առաջին յակուտական օպերան (1947):

**ՄԵՍՐՈՊ** Գևորգ (Տեր-Մեսրոպյան Գևորգ Պողոսի) [12.5.1881, Պարտիզակ (Նիկոմեդիայի գավառ)—30.9.1948, Սոֆիա], մանկավարժ, պատմաբան, բանասեր, հասարակական գործիչ: Սովորել է ծննդավայրի Ներսես-Շուշանյան վարժարանում, ամերիկյան դպրոցում, Երուսաղեմի Ժառանգավորաց վարժարանում (1899—1902), Արմաշի դպրեվանքում (1904—08): 1908—22-ին Մ. իբրև տեսուչ և մանկավարժ աշխատել է Կ. Պոլսում, դասավանդել հայոց լեզու, հայ ժողովրդի պատմություն, հայ մատենագրության պատմություն, աշխարհագրություն, հայ քաղաքակրթության և դիվանագիտական մտքի պատմություն: Կ. Պոլսում գլխավորել է հայկ. պատրիարքարանի գաղտնի դիվանի գործունեությունը: Մասնակցել է բազմաթիվ վիճակագրական և պատմական վավերաթղթերի կազմմանը: 1922-ից գիտամանկավարժական և հրապարակախոսական գործունեությունը շարունակել է Բուլղարիայում: 1923-ին Պլովդիվում հիմնել է «Մեսրոպյան ճեմարանը» (1925-ին փոխադրվել է Սոֆիա): Մ. Գ. հրատարակել է (կնոջ՝ Շաքե Մեսրոպյանի հետ) «Հայելի աշխարհի» (1937, Սոֆիա) գիտամանկավարժական պարբերաթերթը: Աշխատություններից են «Ու րա ար տու կամ Հայաստանի նախաբնիկները և իրենց քաղաքակրթությունը» (1911), «Պատմություն հայ եկեղեցվո» (հ. 1—2, 1913—14) դասագիրքը: Նրա «Հայոց պատմություն» (տարրական և միջին 4 դասարանների համար) դասագիրքը օգտագործվել է սփյուռքի բոլոր դպրոցներում, ունեցել մի քանի հրատարակություն, հեղինակ է նաև «Հայոց պատմություն» (քննական, բարձր դասարանների համար, հ. 1, 1914) և «Աշխարհագրություն պատմական Հայաստանի» (1924) դասագրքերի:

*Երկ.* Հայ թարգմանիչները Բյուզանդիոնի մեջ, ԿՊ, 1909: Ազատության իղձալը, ԿՊ, 1909: Հայաստան, ԿՊ, 1919: Հայկարան, Սոֆիա, 1931:

*Գրկ.* Գևորգ Մեսրոպ (կենսագրական գիծեր), Սոֆիա, 1929: *Ա. Գրիգորյան*

**ՄԵՍՐՈՊ** (Մեսրոպյան) Լևոն Մեսրոպի (1880, Պոլիս —1960, Փարիզ), հայ գրող, բանասեր, հասարակական-մշակութային գործիչ: Սովորել է Սամաթիայի Սահակյան և Կեդրոնական վարժարաններում: Մ-ի պատմվածքները, հեքիաթները, պատմության վերաբերյալ ուսումնասիրությունները տպագրվել են «Բյուրակն», «Արևելյան մամուլ» պարբերականներում, ազգագրական և տեղագրական հոդվածները՝ «Ռուսկոյե սլովո» և «Բաքու» թերթերում, աշխատակցել է ֆրանսահայ և ամերիկահայ, ինչպես նաև Թեհրանի ու Կովկասի հայերեն պարբերականներին: Հրատարակված գործերից են՝ «Զարի», «Հաշիշին» (1939), «Ֆրեր Հաքթման և տատա Րոսթեմ», «Քերպելայի գիշերները» (1946), «Կախարդող լեռը և ներգաղթող ձին» (1949) վեպերը, «Մատաթ Րեիս» (1946), «Օտարականը» (1959) պիեսները, «Քուրդիստան և քուրդերը» (1957) ուսումնասիրությունը: Պարսկերենից հայերեն է թարգմանել Օմար Խայյամի քառյակները («Օմար Խայյամ», 1923): 1946-ին և 1954-ին մասնակցել է Հայաստանի գրողների համագումարներին:

*Երկ.* Կախարդող լեռը, Ե., 1955: *Մ. Կուրտիկյան*

**ՄԵՍՐՈՊ Բ ԱՐՏԱԶԵՑԻ** (ծն. թ. անհտ.— 1372), Հայոց կաթողիկոս 1359-ից: Գումարել է Սսի 1361-ի ժողովը՝ կաթոլիկական ծեսերի դեմ պայքար տանելու նպատակով: 1364-ին հիմնել է լեհահայոց արքեպիսկոպոսական թեմը:

**ՄԵՍՐՈՊ ԵՐԵՑ**, Վ ա յ ո ց ձ ո ր ե ց ի (ծն. և մահ. թթ. անհտ.), X դարի հայ մատենագիր: Ծագումով Վայոց ձորի Հողոցմանց գյուղից: 967-ին գրել է *Ներսես Ա Մեծի* վարքը և Մամիկոնյանների տոհմի պատմությունը: Մ. Ե-ի գրվածքում արտացոլվել է *հայ ավատագրական լեգենդի* նախնական տարբերակը, որը հայկ. պետականության անկումից հետո Հայաստանի նորոգ ազատագրումն ու վերականգնումը կապում էր քրիստոնյա հռոմեացիների օգնության հետ: Երկի հիմքում ընկած է նաև հայ-վրացական միացյալ պայքարի գաղափարը: Հետագայում, կապված միջազգային քաղ. իրադրության փոփոխման հետ, Մ. Ե-ի երկը լրացվել է ընդմիջարկություններով, որոնք արտահայտում են հայ ազատագրական լեգենդի էվոլյուցիան: Այն առաջին անգամ հրատարակվել է 1737-ին: Վերահրատարակվել է (2 անգամ, տարբեր վերնագրերով): Թարգմանվել է ֆրանսերեն (1869):

*Երկ.* Պատմութիւն սրբոյն Ներսիսի Պարթևի Հայոց հայրապետի (Սոփերք Հայկականք, հ. 6), Վնտ., 1853: *Վ. Դիլոյան*

**ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑ**, Մ ա շ տ ո ց, Մ ա շ թ ո ց [մոտ 362, գ. Հացեկաց (Տարոնի գավառում)—17.2.440, Վաղարշապատ (այժմ՝ Էջմիածին), թաղված է Օշականում], *հայկական գրի* ստեղծող և հայ ինքնուրույն ու թարգմանական գրականության սկզբնավորող (*Սահակ Ա Պարթևի* հետ), հայ գրչության, հայագիր (հայկական) դպրոցի հիմնադիր և հայերենի առաջին ուսուցիչ, լուսավորիչ, մշակութային-հասարակական գործիչ, քրիստոնեության քարոզիչ, Հայաստանի եկեղեցու վարդապետ: Մ. Մ-ի կյանքի ու գործի վերաբերյալ կան վավերական աղբյուրներ, այդ թվում նրա ժամանակակից և դեպքերի ականատես Կորյունի «Վարք Մաշտոցի» երկը, նաև՝ Մովսես Խորենացու, Ղազար Փարպեցու, Մովսես Կաղանկատվացու, Կարապետ Սասնեցու ընդարձակ վկայությունները (շուրջ 30 հին և միջնադարյան աղբյուրներ): Մ. Մ. կիսազնվական Վարդանի որդին էր: Հայաստանում ստացել է հուն. կրթություն: Տիրապետել է հունարենին, պարսկերենին, ասորերենին, վրացերենին: Մոտ 389-ին հաստատվել է Արշակունյաց մայրաքաղաք Վաղարշապատում և երկրի հազարապետ Առավանի ղեկավարությամբ պաշտոնավարել արքունիքում որպես ատենադպիր, ապա անցել զինվորական ծառայության: 394-ին թողել է զինվորական ծառայությունը և աշխարհիկ կյանքը, դարձել վանական: Ունեցել է աշակերտներ, որոնք հետո եղել են նրա օգնականները լուսավորական գործունեության ասպարեզում: Մ. Մ-ի ճգնավայրերից մեկը եղել է Հայաստանի Երնջակ գավառի (այժմ՝ Նախիջևանի ԻՍՍՀ-ի կազմում) Մեսրոպավանիս (Մսրավանիս) գյուղի մոտակայքը:

Մ. Մ. աշակերտների ուղեկցությամբ կատարել է քարոզչական շրջագայություններ. նախ եղել է Գողթն գավառում, որտեղ, ինչպես և Հայաստանի այլ վայրերում պահպանվում էր հեթանոսական կրոնը: Տեղի իշխան Շաբիթից ստանալով գործելու ազատ հնարավորություն՝ Գողթնում հիմնել է քրիստոնեական համայնքներ, եկեղեցական դասեր: Մ. Մ. այդ առաքելության ժամանակ սկսել է լրջորեն մտահոգվել երկրի վիճակով: Թեև քրիստոնեությունը Հայաստան մուտք էր գործել I դ., 301-ին դարձել պետ. կրոն, բայց ժողովրդի զգալի մասը միայն անվանապես էր քրիստոնյա. երկրում եղած Աստվածաշնչի գրքերը, եկեղեցական այլ երկեր հուն. կամ ասորերեն էին, ընթերցումները, ժամերգություններն ու ծեսերը կատարվում էին ժողովրդի մեծ մասի համար անհասկանալի այդ լեզուներով: Մ. Մ., Աստվածաշունչը հրապարակորեն կարդալիս, անմիջապես բանավոր թարգմանում էր հայերեն՝ ժողովրդին հասկանալի դարձնելու համար: Գողթնում կատարած քարոզչությունը Մ. Մ-ի մեջ հաստատեց հայերեն գիր ու գրականություն ունենալու հրատապ կարևորությունը: Կային այդ որոշումն ընդունելու նաև այլ ծանրակշիռ պատճառներ: 387-ին երկու մասի բաժանված Հայաստանի արլ. և արմ. հատվածները միմյանցից օտարանում էին: Պարսից գերիշխանության տակ գտնվող արլ. մասում թեև պահպանվում էր հայոց թագավորությունը, բայց պարսկ. ազդեցությունն օրավուր մեծանում էր. արքունական գրագրությունը կատարվում էր պարսկ.: Այդ լեզուն ավելի ու ավելի էր թափանցում ժողովրդի բանավոր խոսքի մեջ: Երկրի արմ. մասում, որը միացված էր Բյուզանդիային, վերացված էր հայոց թագավորությունը, եկեղեցին ենթակա էր հուն. եպիսկոպոսությանը, եկեղեցու և պետ. լեզուն հուն. էր: Հայաստանի երկու մասերի միմյանցից օտարացումը սպառնում էր երկրի և ժողովրդի ամբողջությանը, վերահաս էր դառնում հայության ձուլման վտանգը. ամբողջ երկրում դպրոցների, համալսարանների լեզուն հուն. էր, մասամբ՝ ասորերենը. եկեղեցականների զգալի մասը հույներ և ասորիներ էին, հայ հոգևորականության որոշ մասը հունախոս էր: Արմ. շատ գավառներում հունարենն ու հուն. կենցաղը արմատանում էին հայ ընտանիքներում:

Արքունիքում պաշտոնավարելիս և հետո Մ. Մ. կանխազգացել է հայկ. ինքնուրույն պետության մոտալուտ անկումը. «Տեսնելով, որ հայոց թագավորության վերջը հասել է, Մեսրոպը (երկրի) խռովություններն իր համբերության նյութ դարձրեց» (Մ ո վ ս ե ս Խ ո ր ե ն ա ց ի, Պատմություն Հայոց, 1968, էջ 284): Այսպես Մ. Մ-ի համար հայ դպրության հրատապ ստեղծումն ուներ հետևյալ նպատակները. 1. հայացնել քրիստոնեական գրքերը, քարոզչությունն ու արարողությունները կատարել հայերեն, 2. ստեղծել ու զարգացնել մայրենի լեզվով գրականություն, 3. հայությունը փրկել ձուլումից և

դա ապահովել հետագայի համար, 4. ամրացնել երկրի քաղաքականապես երկու մասի բաժանված հատվածների հոգևոր, լեզվական և մշակութային միասնությունը, որը քաղ. միասնության հիմք պիտի դառնար երկրի պետ. անկախությունը վերականգնելու հնարավորության դեպքում: Մ. Մ-ի այս ծրագիրը ձևավորվեց Գողթնում ունեցած գործունեությունից հետո, երբ, ըստ Կորյունի, «Նա մըտքում դրեց ավելի հոգալ նույնպես համայն [Հայոց] աշխարհի ժողովրդին մխիթարելու մասին» (Կ ո ր յ ո ւ ն, Վարք Մաշտոցի, 1962, էջ 98). գրքում բերվում են նաև Մ. Մ-ի խոսքերը. «Տրտմություն է ինձ համար, և անպակաս են իմ սրտի ցավերն իմ եղբայրների, և ազգակիցների համար» (նույն տեղում):

387-ին կաթողիկոս դարձած Սահակ Պարթևը, որ միշտ եղել է ազգակենտրոն քաղաքականության առաջամարտիկ և Մ. Մ-ի գլխավոր հենարանը նրա գործունեության սկզբից ևեթ, ունեցել է նույն մտահոգությունները: Գալով Վաղարշապատ, Մ. Մ. կաթողիկոսին հայտնում է իր ծրագիրն և անմիջապես ստանում նրա լիակատար հավանությունը: Գումարվում է ժողով՝ նվիրված հայերեն գիր ունենալու հարցին: Վռամշապուհ թագավորը հավանություն է տալիս նպատակին՝ հայտնելով, որ Ասորիքում Դանիել անունով եպիսկոպոսի մոտ հայերեն գրեր կան: Ժողովի խնդրանքով թագավորը հայ գրերի նախանձախնդիր մի իշխանի՝ Վահրիճ անունով, ուղարկում է Դանիելի մերձակից Հաբել երեցի մոտ: Վերջինս Դանիելից առնելով գրերը՝ Վահրիճի հետ բերում է Հայաստան: Այստեղ հիմնվում են դպրոցներ, Մ. Մ. ստանում է վարդապետի (ուսուցչի) կոչում և սկսում մանուկներին հայոց լեզու ուսուցանել բերված գրերով: Սկիզբ է դրվում հայերեն դպրությանը: Մոտ երկու տարվա (ըստ ոմանց՝ երկու ամսվա) դասավանդումից հետո պարզվում է, որ *դանիելյան նշանագրերը* ժամանակի հայերենն արտահայտելու համար անբավարար են ու անհարմար լեզվի վանկարկման և ուսուցման տեսակետից, «...հասկացան, որ այդ նշանագրերը բավական չեն հայերեն լեզվի սիղոբաները—կապերն ամբողջությամբ արտահայտելու համար» (նույն տեղում, էջ 100): Դանիելյան նշանագրերի մասին բանասերները հակադիր ենթադրություններ են արել. բացառված չէ, որ դրանցով ինչ-որ ժամանակ գրվել է հայերեն, իսկ Մ. Մ-ի օրոք դրանք չեն բավարարել հայերեն դասավանդելու, թարգմանելու և հայոց դպրություն ստեղծելու համար:

Սահակ Պարթևի երաշխավորությամբ, թագավորի հրամանով այս անգամ Մ. Մ. իր աշակերտ-օգնականների հետ, մի խումբ մանուկներ առած, ուղևորվում է Ասորիք: Լինում է Ամիդ, ապա՝ Եդեսիա քաղաքներում, հայոց գրերի մասին խորհրդակցում ասորի հոգևորականների հետ, բայց՝ ապարդյուն: Մանուկների մի մասին ասորական կրթության է տալիս Եդեսիայում, մյուսին ուղարկում ավելի հյուսիս՝ Սամոսատ, հուն. կրթության: Եդեսիայում Մ. Մ. ստեղծագործական երկունք ապրեց, «...նա շատ նեղություններ քաշեց իր ազգին մի բարի օգնություն գըտնելու համար» (նույն տեղում, էջ 101): Մ. Մ. 405 թ. ստեղծում է հայերենի հնչյունական համակարգը ճշգրտորեն արտահայտող, ուսուցանելու, թարգմանելու և դպրություն ստեղծելու նպատակին լիովին հարմար նշանագրեր. «Նա իր սուրբ աջով հայրաբար ծնեց նոր և սքանչելի ծնունդներ՝ հայերեն լեզվի նշանագրեր» (նույն տեղում): Եդեսիայում Մ. Մ. նորագյուտ տառերը դասավորում է՝ օգտվելով հուն. այբուբենի հերթականությունից, տառերին տալիս է անուններ (այբ, բեն), որոշում է նրանց թվային արժեքները (Ա= 1, Ժ= 10, Ճ= 100): Ապա անցնելով Սամոսատ՝ հըմուտ հունագետ *Հռոփանոսի* օգնությամբ կատարելագործում է նորագյուտ տառերի գծագրությունը, նոր տառերն ուսուցանում իր օգնականներին և այդտեղ հուն. կըրթություն ստացող մանուկներին, իր աշակերտներ Հովհան Եկեղեցացու և Հովսեփ Պաղնացու հետ սկսում է նոր գրի օգնությամբ Աստվածաշնչից հայերեն թարգմանել Սողոմոնի առակները, որոնց սկիզբն է՝ «Ճանաչել զիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ». սրանք մեսրոպյատառ գրված առաջին բառերն են:

Հայոց գրերը ստեղծելիս՝ Մ. Մ. պետք է լուծեր մի շարք բարդ խնդիրներ, որոնցից էին՝ Հայաստանի ավելի քան 300 հզ. *կմ²* տարածքում խոսվող բարբառների պայմաններում միասնական գրական հայերենի համար հնչյունական կանոնի որոշումը, գրության ձախից աջ (ինչպես հունարենում) և աջից ձախ (ինչպես ասորերենում) եղած տարբերակներից մեկն ընտրելը, ձայնավորների համար տառեր ունենալու թե չունենալու և կամ ձայնավորները հավելանշումներով (դիակրիտիկ նշաններով) արտահայտելու հարցի լուծումը են: Հայերենի հնչյունական համակարգը որոշելիս Մ. Մ. առավելապես նկատի առավ արքունիքում, նախարարական որոշ տներում, հոգևորականների շրջանում ձևավորված ծառայողական (ատենական) հայերենը, որը հենված էր Այրարատյան (ըստ այլ կարծիքների՝ Տարոնի) խոսվածքի վրա և ինքը գործածում էր Ս. գիրքը բանավոր թարգմանելիս ու քարոզելիս: Շրջանցելով խոսվածքային նեղ առանձնահատկությունները՝ նա որոշեց բառակազմիչ հնչյունների (հնչույթների) իրական քանակը, հայերենի համար բացասեց վանկային և ձայնավորներ չունեցող գրային համակարգերը, առաջնորդվեց մեկ հնչյունին (հնչույթին) մեկ գիր սկզբունքով, հայերենի յուրաքանչյուր հնչյունի համար ստեղծեց մեկ նշանագիր (բացառություն էր **ու** հնչյունը, եթե այն երկբարբառային արտասանություն չուներ): Մ. Մ. իրավացիորեն հրաժարվեց տառերի ձայնային արժեքը փոփոխող կետերից ու գծիկներից՝ յուրաքանչյուր դեպքում գերադասելով ունենալ առանձին տառ: Այդպես ստեղծեց 36 տառ, որոնց կիրառությունը ճշտեց Սողոմոնի առակները թարգմանելիս՝ որդեգրելով գրելու հորիզոնական աջընթաց հարմարագույն եղանակը, դրեց հայերենի ուղղագրության հիմքը (օրինակ՝ թեև ստեղծել էր ը տառը, բայց, նկատի առնելով համապատասխան հնչյունի հաճախակի գործածությունը հայերենում, ը տառի գրությունը սահմանափակող կանոն հաստատեց): Մ. Մ-ի ստեղծած գիրը և ուղղագրությունը դարձան ամենից լիարժեքը ժամանակի մյուս գրային համակարգերի շարքում և չհնացան անցած մոտ 1600 տարիներին: Միջնադարում Մ. Մ-ի այբուբենին ավելացան միայն օ և ֆ տառերը: Հետագայում արվել են մի քանի ուղղագրական փոփոխություններ (հատկապես արևելահայերենի համար՝ 1922-ին, 1940-ին):

Մաշտոցը նորաստեղծ գրերով վերադառնում է հայրենիք: Երկրում ծավալվում է *թարգմանչաց շարժումը*, որը լուսավորական-կրթական ընդարձակ ու երկարատև գործունեություն էր (երկրի բոլոր մասերում հայկ. դպրոցների հիմնադրում, թարգմանական ծավալուն աշխատանք, հայ դպրության ստեղծում, եկեղեցու և քարոզչության հայացում, հայ գրչության կենտրոնների ու գրադարանների հիմնում):

Սահակ Պարթևն ու Մ. Մ. աշակերտների հետ սկսել են Աստվածաշնչի թարգմանությունը՝ մի մասն ասորերենից, մյուսը՝ հուն-ից: Մ. Մ. նախքան այդ, իր քարոզչական գործունեության ժամանակ, բազմիցս բանավոր թարգմանած լինելով Աստվածաշնչի առանձին հատվածներ, դըրանց զգալի մասն անգիր գիտեր, և մնում էր ստուգել ու գրի առնել նորագյուտ տառերով: Կարճ ժամանակում Ս. գրքի հիմնական մասը թարգմանվել է հայերեն և բազմացվել գրչությամբ: Այդ ընթացքում թարգմանվել են նաև փիլ., ժամանակագրական, բնագիտական և այլ բնույթի երկեր:

Տառերի գյուտից հետո Մ. Մ. իր օգնականների հետ շրջագայել է Հայաստանում, հավաքագրել աշակերտներ, հիմնել դպրոցներ (տես *Մեսրոպյան դպրոցներ*), ինքը տվել հայերենի դասավանդման առաջին օրինակը, հիմնադրել է վանքեր, որոնք դարձել են ուսման, գրչության ու գիտության կենտրոն և օրինակ՝ հետագա դարերում նորերը հիմնելու:

Առաջին երեք շրջագայությունները Մ. Մ. կատարել է Արևելյան Հայաստանում, չորրորդը՝ Արևմտյան Հայաստանում: Այստեղ Անատոլիս կուսակալը, Մ. Մ-ին պատիվներով ընդունելուց հետո, նրա մտադրությունները հայտնել է Բյուզանդիայի Թեոդոս II կայսրին: Սա Մ. Մ-ին շնորհել է Ակումիտ (տքնող, արթուն հըսկող) պատվավոր տիտղոսը, սակայն զըրկել է գործունեության իրավունքից, և Մ. Մ., օգնականների մի մասին թողնելով Փոքր Հայքի Մելիտենե (Մալաթիա) քաղաքում, մնացածների հետ մեկնել է Կ. Պոլիս, բանակցել կայսրի և հունաց Ատտիկոս պատրիարքի հետ, ստացել հայ երեխաներին մայրենի լեզվով կրթելու և հայ հոգևորականների դասեր հաստատելու կայսերագիր իրավունք: Վերադառնալով Արևմտյան Հայաստան՝ այստեղ նույնպես հիմնել է հայկ. դպրոցներ, մշակութային կենտրոններ:

Ըստ Կորյունի, Արևելյան Հայաստանում կատարած երրորդ շրջագայության ժամանակ, «սկսեց Տիրոջից իրեն շնորհվածի համեմատ նշանագրեր հորինել վրա-

ցերեն լեզվի համար» (Նույն տեղում, էջ 110, նույնի մասին՝ Մովսես Խորենացի, Պատմություն Հայոց, 1968, էջ 294):

Արևելյան Հայաստանում կատարած իր մի այլ (հինգերորդ) շրջագայության ժամանակ Մ. Մ. այցելել է Բուն Աղվանք (Կուր գետի ձախ ափին), ամենաբազմամարդ ցեղի՝ գարգարացիների լեզվի համար տեղացի Բենիամին երեցի օգնությամբ ստեղծել տառեր [«Նշանագրեր ստեղծեց գարգարացիների լեզվի համար» (Մովսես Խորենացի, նույն տեղում, էջ 294, նույնի մասին՝ Կորյուն, նույն տեղում, էջ 111—116)], հիմնել դպրոցներ, սկիզբ դրել թարգմանական գործին:

431-ին Մ. Մ-ի աշակերտներ Ղևոնդ Վանանդեցին, Կորյունը, Եզնիկ Կողբացին և Հովսեփ Պաղնացին Կ. Պոլսից բերել են Աստվածաշնչի Յոթանասնից կոչվող հուն. թարգմանության ստուգված օրինակը, եկեղեցական երկու ժողովների կանոնները և այլ գրականություն: Սկիզբ է առել Աստվածաշնչի նախնական շտապ (փութանակի) կոչվող թարգմանության համեմատական խմբագրումը, չեղած հատվածների թարգմանումը, որով ստեղծվել է Աստվածաշնչի հայտնի Սահակ-Մեսրոպյան հայերեն թարգմանական բնագիրը: Շարունակելով թարգմանական և խմբագրական աշխատանքը՝ Մ. Մ. և Սահակ Պարթևը կազմել են հայ եկեղեցու Պատարագամատույցի, Տիսարանի («Մաշտոցի»), Ժամագրքի նախնական տարբերակները: Մ. Մ. գրել է քարոզներ, ճառեր, ուղերձներ, կազմել է հուն. երկերի մի ժողովածու, որը հետո ինքը թարգմանել է հայերեն, ըստ որոշ տվյալների՝ խմբագրել է Գրիգոր Լուսավորչի «Յաճախապատում» քարոզների ժողովածուն:

Մ. Մ. եղել է ժամանակի խոշոր հայ բանաստեղծը: Ըստ տեղեկությունների, ճգնակյաց կյանքի տարիներից սկսած նա հոգևոր բանաստեղծություններ է հորինել: Տառերի գյուտից հետո, երբ ծառացավ եկեղեցու ծեսերը, երգեցողությունը հայացնելու խնդիրը, Մ. Մ-ի ստեղծած երգերը որդեգրվեցին եկեղեցու կողմից, իսկ հետագայում մտան Շարականի մեջ: Ըստ բազում վկայությունների՝ շարակնոցներում Ապաշխարության կարգի երգերը Մ. Մ-ինն են. ուսումնասիրողները ստուգապես նրանն են համարում դրանց մի մասը՝ շուրջ 130 բանաստեղծություն, այդ թվում՝ Հարց, Տէր երկնից, Ողորմեա շարքերից: Դրանք մեսրոպյան տառերով գըրված առաջին չափածո երկերն են, որոնցով Մ. Մ. դարձել է հայ գրավոր բանաստեղծության հիմնադիրը: Մ. Մ-ի բանաստեղծությունները խորապես քնարական են, կրում են հեղինակի խոր ներշնչանքի կնիքը:

Ծով կենցաղոյս հանապազ զիս ալեկոծէ,
Մրրրկեալ ալիք թշնամին ինձ յարուցանէ.
Նաւապետ բարի, լեր անձին իմոյ ապաւէն
(Շարական, ԿՊ, 1853, էջ 149):

Մ. Մ. ստեղծեց հայ գրավոր բանաստեղծության առաջին չափերն ու հանգերի տարրերը: Նրա բանաստեղծական արվեստը ազդել է Գրիգոր Նարեկացու, Ստեփանոս Սյունեցու, Ներսես Շնորհալու և միջնադարի այլ բանաստեղծների վրա:

Մ. Մ., Սահակ Պարթևի հետ, հիմնադրել է հայ մասնագիտական երաժշտությունը. նրանք կարգավորել են հայոց բանավոր ժող. ու հոգևոր ձայնեղանակները և օգտագործել եկեղեցական երաժշտության մեջ՝ հայ մասնագիտական երաժշտության ելևէջումը պայմանավորելով հայոց լեզվի հնչերանգով: Մ. Մ. եղել է նաև հայ երգի առաջին դպրոցական ուսուցիչը:










Հատված Մեսրոպ Մաշտոցի «Ապաշխարհության շարականներ»-ից, գրառումը Ն. Թաշճյանի (փոխադրություն հայկական ձայնանիշերից)

Մ. Մ. հայերենի առաջին ուսուցիչը լինելով՝ նաև հայ մանկավարժության առաջամարտիկն է: Նա մշակել է հայոց լեզվի, հայ երաժշտության և հայկական նորաստեղծ դպրոցներում ուսուցվող մյուս առարկաների դասավանդման սկզբունքները, որոշեց հայկական դպրոցի լեզվական հիմունքը՝ դասավանդումն սկսել մեսրոպյան տառերի և հայերենի, որպես միակ մայրենի լեզվի, ուսուցմամբ, հանրակրթական առարկաները դասավանդել հայերեն, օտար լեզուները՝ հայոց լեզվի հիման վրա: Մաշտոցյան այս հիմունքը հետագա դարերում ավանդական դարձավ հայկական դպրոցների համար՝ թե հայրենիքում, թե նրանից դուրս:

Մ. Մ-ի մանկավարժական հայացքների կարևոր մի կողմն է դպրոցում դասավանդումը աշակերտներին լիովին հասկանալի լեզվով կատարելը: Հայաստանի դպրոցներում հունարեն և ասորերեն դասավանդումը ամբողջությամբ հայերենով փոխարինելը, հիմնական նպատակից բացի, նաև մանկավարժական այս խորհուրդն է ունեցել:

Մ. Մ-ի աշխարհայացքին բնորոշ է մարդու ինքնաճանաչման և կատարելագործման գաղափարը. մարդն իր ոչ կատարյալ լինելը, ներքին անմաքրություններն ու արատավոր արարքները գիտակցում է Կատարյալը ճանաչելու և Նրա հետ շփվելու շնորհիվ, որը մարդուն մղում է դեպի խոր զղջում՝ ապաշխարություն և ճանապարհ բացում Կատարյալին մոտենալու ու ձուլվելու, ներքնապես մաքրվելու և համընդհանուր սիրով լցվելու: Մ. Մ-ի հասարակական հայացքների մեջ կարևոր է ժողովրդին մայրենի լեզվով լուսավորելու, հայությունն ու հայրենիքը քրիստոնեական եկեղեցու և հայոց լեզվի ու հայ մատենագրության միջոցով միավորելու, ժողովրդի ազգային ինքնությունը պահպանելու գաղափարները:

Որպես անհատ Մ. Մ., Մովսես Խորենացու վկայությամբ, գերազանցել է «...բոլոր առաքինի մարդկանցից, որպիսիք այն ժամանակ կային: Որովհետև ամբարտավանությունը և մարդահաճությունը նրա վարքում երբեք տեղ չգտան, այլ հեզ, բարյացակամ և բարեմիտ լինելով, երևում էր բոլորին երկնայինների սովորությամբ զարդարված: Որովհետև նա հրեշտակի տեսք ուներ, բեղմնավոր միտք, պայծառ էր խոսքով, գործերով ժուժկալ» (Պատմություն Հայոց, 1968, էջ 314): Կորյունը վկայում է՝ «...շատ բանտարկյալներ ու կալանավորներ և նեղյալներ ազատեց՝ Քրիստոսի ահավոր զորությամբ կոչելով նրանց բռնակալների ձեռքից... շատ մուրհակներ պատռեց» (Վարք Մաշտոցի, 1962, էջ 121):

Մ. Մ-ի մահից հետո հազարապետ Վահան Ամատունին և զորավար Հմայակ Մամիկոնյանը մեծ բազմությամբ նրա մարմինը տեղափոխում են Օշական, որտեղ երեք տարի անց Վահան Ամատունին տաճար է կառուցում, աճյունը տեղափոխում այնտեղ: Նրա հիշատակը հարգելու համար Հովսեփ կաթողիկոսը հանձնարարում է Կորյունին գրելու Մ. Մ-ի կյանքն ու գործը: Հայ եկեղեցին, նկատի ունենալով Մ. Մ-ի ժողովրդականությունը, նրան դասել է իր սրբերի շարքը:

428-ին Հայաստանի արլ. մասում նույնպես վերացավ հայոց Արշակունիների պետականությունը: Քաղ. տեսակետից Հայաստանի համար այդ ծանր ժամանակաշրջանում Մ. Մ-ի գյուտով ծնունդ առած հայոց դպրությունը արագ ծաղկեց որպես ժողովրդի հոգևոր սննդի միջոց, որպես երկրի քաղաքականապես անջատ մասերը հոգևոր ու մշակութային զոդումով միավորող և հայությանը ձուլումից պատըսպարող ուժ:

Հայաստանում և սփյուռքում Մ. Մ-ի անունով են կոչվում պետ. ու հասարակական հիմնարկներ, դպրոցներ, փողոցներ ևն: 1962-ից Մ. Մ-ի անունն է կրում հայկ. ամենահարուստ ձեռագրատունը՝ Մատենադարանը: Օշականի ճանապարհին կանգնեցվել է մաշտոցյան այբուբենին նվիրված հուշակոթող:

Պատկերազարդումը տես 473-րդ էջից առաջ՝ ներդիրում:

*Երկ.* Ապաշխարության շարականներ: Շարական հոգևոր երգոց, Էջմիածին, 1861:

*Գրկ.* Կորյուն, Վարք Մաշտոցի, աշխարհաբար թրգմ., ներած. ուսումնասիր., առաջաբան և ծանոթագր. Մ. Աբեղյանի, Ե., 1962: Մովսես Խորենացի, Պատմութիւն Հայոց, Ե., 1968: Ղազար Փարպեցի, ...Պատմութիւն Հայոց, աշխատությամբ Գ. Տեր-Մկրտչյանի և Ս. Մալխասյանցի, Տփղիս, 1904: Կարապետ Սասնեցի, Ներբողեան յաղագս վարուց և մահուան Ս. Վարդապետին Մեսրոբայ, Վաղ-պատ, 1897: Ակինյան Ն., Ս. Մաշտոց Վարդապետ, Վնն., 1949: Մեսրոպ Մաշտոց: Հոդվածների ժող., Ե., 1962: Լեո, Մեսրոպ Մաշտոց, Ե., 1963: Մեսրոպ Մաշտոց: Հոդվածների ժող., Ե., 1963: «ԲՄ», 1964, № 7: Աճառյան Հ., Հայոց գրերը, Ե., 1968: Манандян Я., Месроп Маштоц и борьба армянского народа за культурную самобытность, Е., 1941.

*Ռ. Իշխանյան*

**ՄԵՍՐՈՊԱՎԱՆԻ ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՎՈՐԻՉ ՎԱՆՔ**, Մեսրոպ Մաշտոց վանք, ճարտարապետական հուշարձան պատմական Գողթն գավառի Մեսրոպավան (Մսրըվանիս, Մասրևան) գյուղում (այժմ՝ Նախիջևանի ԻՍՍՀ Օրդուբադի շրջանի գ. Նասըրվազ): Ըստ ավանդության հիմնադրել է Գողթնի Շարիթ իշխանը 456-ին: Ավերվել են վանական համալիրի քառանկյուն պարիսպը, գավիթը, օժանդակ շինությունները: Պահպանված միակ հուշարձանը կիսավեր, ուղղանկյուն հատակագծով,

Մեսրոպավանի Գրիգոր Լուսավորիչ կամ Մեսրոպ Մաշտոց վանքը

քառամույթ գմբեթավոր եկեղեցին է, որի ութանիստ թմբուկի նիստերին լուսամուտներ են: Հուշարձանին արմ-ից կից է եղել գավիթ-սրահը: Ըստ վիմագիր արձանագրությունների եկեղեցին վերանորոգվել է XV և XVII դդ-ում, վերջին անգամ՝ XIX դ. վերջին: Եկեղեցուց հս. գերեզմանատունն է:

Գրկ. Լալայան Ե., Օրդուբադի կամ Վերին Ագուլիսի ոստիկանական շրջան և կամ Գողթն, «ԱՀ», գիրք 11—12, Թ., 1904—05: Այվազյան Ա., Նախիջևանի պատմաճարտարապետական հուշարձանները, Ե., 1978: *Ա. Այվազյան*

**ՄԵՍՐՈՊՅԱՆ ԱՅԲՈՒԲԵՆ**, տես *Հայկական գիր*:

**ՄԵՍՐՈՊՅԱՆ ԴՊՐՈՑՆԵՐ** (Մեսրոպյան վարժարաններ), V դ. Հայաստանում *Մեսրոպ Մաշտոցի* հիմնադրած հայկական դպրոցները: Առաջին անգամ Մեսրոպ Մաշտոցը դպրոց հիմնել է դանիելյան գրերը Հայաստան բերվելուց հետո (մոտ 404-ին): Հայկ. գրերի գյուտից (405—06) հետո նա եռանդուն աշխատանք է ծավալել՝ Արևելյան, ապա Արևմտյան Հայաստանում դպրոցներ հիմնել, դասավանդման օրինակ տվել: Դասավանդվել են հայոց լեզու, հայոց երգ, երաժշտություն, գրչության արվեստ, կրոնական և աշխարհիկ առարկաներ ևն: Մ. դ-ներից մի քանիսը վերաճեցին համալսարանների, նույն սկզբունքներով հիմնվեցին նոր համալսարաններ: XIX դ. Հայաստանում և հայկ. գաղթավայրերում, ինչպես և այժմ սփյուռքում մի շարք հայկ. դպրոցների տրվել է Մեսրոպյան վարժարան անունը: *Ռ. Իշխանյան*

**ՄԵՍՐՈՊՅԱՆ ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, տարբեր ժամանակ Կ. Պոլսում և այլուր գործած կրթական-լուսավորական կազմակերպություններ: Առաջինը հիմնել են (1847) Կ. Պոլսի կաթոլիկ հայերը (կոչվել է նաև Մեսրոպյան եղբայրություն): Նրա խնամակալությամբ գործել է նույնանուն վարժարան: 1888-ին ընկերությունը վերակազմվել է՝ հոգալով նաև վարժարանի չքավոր աշակերտների ուսումնական ծախքերը: 1854-ին կազմվել է մեկ այլ Մ. ը., որի նպատակն էր տպագրել գրական գործեր (1855-ից հրատարակել է նաև «Աստղիկ արևելյան» ամսագիրը): Նույն թվականի վերջին ընկերությունը ցրվել է, դադարել է նաև ամսագրի լույսընծայումը: 1864-ին Մ. ը. է հիմնվել նաև Կ. Պոլսի Ռումելի Հիսար թաղամասում (նպատակներից մեկը եղել է աղքատ արհեստավորներին ձրի ուսում տալը)՝ գոյատևելով մինչև 1880-ական թթ.: 1869-ին Մ. ը. է ստեղծվել Կ. Պոլսի Եենի Գաբու թաղամասում: 1881-ի փետրվարին Զմյուռնիայում ևս հիմնվել է Մ. ը., որը ծավալել է կրթական-լուսավորական եռանդուն գործունեություն:

Գրկ. Պողոսյան Ե., Պատմություն հայ մշակութային ընկերություններու, հ. 1, Վնն., 1957: *Հ. Դավթյան*

**ՄԵՍՐՈՊՅԱՆ ՇՐՋԱՆԻ ՀԱՅԵՐԵՆ**, տես *Գրաբար*:

**ՄԵՍՐՈՊՅԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ** Զմյուռնիայում, հիմնվել է 1799-ին՝ հայ համայնքի նվիրատվություններով: Կրոնական առարկաներից բացի դասավանդվել են հայերեն, հուն., թուրք., իտալ., թվաբանություն (հետագայում՝ երկրաչափություն, հանրահաշիվ), պատմություն, դիցաբանություն, աշխարհագրություն, գծագրություն, վայելչագրություն, ճարտասանություն, փիլիսոփայություն, ֆրանս., անգլ., 1886-ից՝ աշխարհաբար: 1850-ական թթ. սովորում էր 400, ավելի ուշ՝ 600 աշակերտ: Դասավանդումը տարվում էր միջնակարգ դպրոցի ծրագրով: Շրջանավարտները կարող էին ընդունվել բարձրագույն ուս. հաստատություններ: Մինչև 1877-ը ուսուցումը ձրի էր, այնուհետև՝ չափավոր վարձով, ուներ գիշերօթիկ բաժին: 1840—1845-ին գործել է տպարան, հրատարակվել է 10 անուն գիրք: Լույս են տեսել «Թութակ հայկազյան» և «Երկասեր» մանկական հանդեսները, որոնցում տպագրվել են դպրոցականների ստեղծագործությունները: Մ. վ. ուներ հարուստ գրադարան, բնագիտական թանգարան: 1891-ին ըստեղծվել են կիրակնօրյա, շաբաթօրյա ու երկօրյա դասընթացներ՝ ուսուցումից դուրս մնացած երիտասարդության համար: Վարժարանի տեսուչներ են եղել Հ. Վանանդեցին, Ա. Փափազյանը, Ս. Ոսկանյանը, Մ. Մամուրյանը, Հ. Իֆեկճյանը, Մ. Աղաբեկյանը, Թ. Պոյաճյանը և ուրիշներ: Սովորել են Ղ. Պալդազարյանը, Խ. Մելիքսելումյանը, Տետեյան եղբայրները, Ս. Ոսկանյանը, Ս. Վանանդեցին, Գ. Չիլինկիրյանը, Մ. Մամուրյանը, Մ. Աղաբեկյանը, Գ. Բաբազյանը, Գ. Մարկոսյանը, Մ. Նուպարյանը, Գ. Մսերյանը, Ս. Ապրոն և ուրիշներ: Վարժարանը տվել է ավելի քան 1500 շրջանավարտ: Գոյատևել է մինչև 1922-ը, երբ հույն-թուրքական պատերազմի հետևանքով գաղթավայրը վերացել է: *Մ. Հակոբյան*

**ՄԵՍՈՒՄԵՆՑ** Ավետիս Գևորգի [ծն. 6.1.1905, Արաբկիր (Արևմտյան Հայաստանում)], հայ կոմպոզիտոր: 1930-ին ավարտել է Լիոնի կոնսերվատորիան: 1946-ից հաստատվել է Փարիզում, երկար տարիներ ղեկավարել «Սայաթ-Նովա» ազգագրական անսամբլը: Բազմաթիվ մեներգերի, զուգերգերի, խմբերգերի, կամերային երկերի, բալետի և օպերաների (դրանց թվում՝ «Անուշ», ըստ Հ. Թումանյանի) հեղինակ է: Նրա չորս՝ «Նաիրյան» ծրագրային սիմֆոնիաները նվիրված են հայ ժողովրդի պատմական անցյալին և վերածննդին: Բեյրութում շահել է երկու առաջին մրցանակ՝ «Մեսրոպյան լեզու» (Պ. Սևակի բանաստեղծությամբ) կանտատի, 1965-ին՝ «Եղերական համանվագ»-ի համար: Առանձնապես արժեքավոր են Տարոնի, Արաբկիրի, Եդեսիայի, Չմշկածագի, Շապին Գարահիսարի ժող. երգերի գրառումներն ու դաշնավորումները: *Յ. Բրուտյան*

**ՄԵՏԱ...** (< հուն μετά — դուրս, հետո, միջև), բարդ բառերի սկզբնամաս, որն արտահայտում է ինչ-որ բանին հաջորդելը, անցումը ինչ-որ այլ բանի, վիճակի փոփոխություն (օրինակ, *մետալեպսի*, *մետատեսություն*, քիմիայում՝ մետա-քսիլոլ):

**ՄԵՏԱԲԱԶԻՍ** (< *մետա...* և հուն. βάσις — հիմք), *մետամորֆային ապար*. առաջացել է հիմքային մագմատիկ ապարների մետամորֆիզմի հետևանքով: Մ-ներին են պատկանում մետամորֆացված դիաբազները, գաբբրոները, դիորիտները և երբեմն՝ թերթաքարերն ու ամֆիբոլիտները: Տես *Մետամորֆային ապարներ*:

**ՄԵՏԱԲԱՐՈՅԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ**, բարոյականության զուտ ձևական նեոպոզիտիվիստական տեսություն: Ի հակադրություն *նորմատիվ բարոյագիտության*, Մ. դիտվում է որպես բարոյականության գիտատեսական հետազոտման միակ բնագավառ: Փորձելով ստեղծել բարոյականության փիլիսոփայություն, նեոպոզիտիվիզմը բարոյագիտության խնդիրները սահմանափակում է բարոյագիտության լեզվի տրամաբանության վերլուծությամբ, բարոյագիտության տերմինների ճշգրտմամբ և դասակարգմամբ: Քննադատելով Մ-յան մեթոդաբանական նախադրյալները՝ մարքսիստական բարոյագիտությունը չի ժխտում այդ պրոբլեմատիկայի կարևորությունը, «Մ.» տերմինը օգտագործելով բարոյագիտության իմացաբանական և տրամաբանական պրոբլեմների ուսումնասիրության իմաստով: *Կ. Սարինգուլյան*

**ՄԵՏԱԲՈԼԻԶՄ** (< հուն. μεταβολή — փոփոխություն, փոխակերպություն), տես *Նյութափոխանակություն*:

**ՄԵՏԱԲՈԼԻՏՆԵՐ**, տես *Նյութափոխանակության արգասիքներ*:

**ՄԵՏԱԳԱԼԱԿՏԻԿԱ** (*մետա...* և *Գալակտիկա*), գալակտիկաների և նրանց խմբերի հսկայական համակարգ, որի մասն են կազմում ժամանակակից խոշորագույն աստղադիտակների համար մատչելի բոլոր գալակտիկաները: Մ-ի ներկայումս դիտվող մասում գալակտիկաների թիվն անցնում է մեկ միլիարդից: Մեր Գալակտիկայի կամ *Ծիր կաթինի* համակարգի ամենամոտ հարևաններն են Մագելանի մեծ և փոքր ամպեր կոչվող գալակտիկաները, որոնց հեռավորությունը շուրջ 160.000 *լս.-տ.* է, իսկ հայտնիներից ամենահեռավորներինը՝ ավելի քան 10 մլրդ *լս.-տ.*

(հեռավորությունները որոշվում են գալակտիկաների սպեկտրներում գծերի *կարմիր շեղման* միջոցով)։ Մ-ում նյութը բաշխված է խիստ անհավասարաչափ, հիմնականում կենտրոնացած է գալակտիկաներում, որոնք կազմում են տարբեր չափերի ու բարդության համակարգեր՝ ընկըսած կրկնակի, եռակի և բազմակի գալակտիկաներից մինչև *գալակտիկաների կույտերը* (պարունակում են մինչև մի քանի հզ. բաղադրիչներ)։ Օրինակ, մեր Գալակտիկան, *Անդրոմեդայի* համաստեղության մեջ դիտվող հսկա գալակտիկան՝ իր արբանյակ-գալակտիկաներով, ինչպես նաև մի քանի մոտակա այլ գալակտիկաներ կազմում են *գալակտիկաների տեղական համակարգը*։ Որոշ աստղագետներ կարծում են, որ Մ-ում կան գալակտիկաների ավելի մեծ համակարգեր՝ գերկույտեր։ Ենթադրվում է, որ գալակտիկաների այդպիսի գերկույտ, կազմված տասնյակ հազարավոր գալակտիկաներից, շուրջ 60—100 մլն *լ.-տ.* տրամագծով գտնվում է հյուսիսային գալակտիկական կիսագնդում (կենտրոնը՝ *Կույսի* համաստեղությունում)։ Գալակտիկաների այդ տեղական գերկույտի մեջ է մտնում, մասնավորապես, գալակտիկաների տեղական համակարգը։

Աստղադիտակների հզորության մեծացման, լուսաընդունիչների զգայնության աճի, ինչպես նաև դիտումների ալիքային տիրույթի ընդլայնման շնորհիվ հայտնագործվել են շատ մեծ լուսատվությամբ գալակտիկաների նոր տեսակներ՝ *ռադիոգալակտիկաներ*, *քվազարներ* են, որի հետևանքով զգալիորեն աճել է Մ-ի դիտվող մասի շառավիղը։

Մ-ում նյութի միջին խտությունը շատ փոքր է՝ $10^{-31}$—$10^{-30}$ *գ/սմ*$^3$, իսկ միջգալակտիկական տարածությունում այն չնչին է. այդտեղ գտնվում են առանձին աստղեր, գազ և փոշի, կան նաև էլեկտրամագնիսական ալիքներ, տիեզերական ճառագայթներ, ձգողական, մագնիսական և այլ դաշտեր։

Մ-ի ամենակարևոր յուրահատկություններից է *դրա դիտվող մասում* գալակտիկաների փոխադարձ հեռացումը, այլ կերպ ասած, Մ-ի ընդարձակումը։ Ընդհանրապես Մ-ի չափերի, ձևի և կառուցվածքի մասին շատ քիչ բան է հայտնի։ Ժամանակակից դիտումները ցույց չեն տալիս Մ-ի միջին խտության որևէ նվազում՝ մեծ հեռավորությունների վրա, որը կվկայեր Մ-ի սահմաններին մոտենալու մասին։ Պետք է ենթադրել, որ մենք դիտում ենք հսկայական չափերի, բայց և վերջավոր ու սահմանափակ Մ-ի մի մասը միայն։ Բացառված չէ, որ Տիեզերքում կան նաև այլ Մ-ներ են։ Ուստի, ճիշտ չէ նույնացնել Մ. ամբողջ Տիեզերքի հետ, ինչպես հաճախ այդ արվում է *կոսմոլոգիայում*։

*Գրկ.* Աղեկյան Թ. Ա., Աստղեր, գալակտիկաներ, մետագալակտիկա, Ե., 1971։ Проблемы современной космогонии, под ред. В. А. Амбарцумяна, М., 1972; Амбарцумян В. А., Философские вопросы науки о Вселенной, Е., 1973; Воронцов-Вельяминов Б. А., Внегалактическая астрономия, М., 1978; Hubble E., The Realm of the Nebulae, New Haven—L., 1936; Shapley H., The Inner Metagalaxy, L.—New Haven, 1957; Zwicky F., Morphological Astronomy, B.—Göttingen—Heidelberg, 1957. *Լ. Միրզոյան*

**ՄԵՏԱԳԵՆԵԶ** (*մետա*... և հուն. γένεσις — ծագում), տես *Սերունդների հաջորդականություն*։

**ՄԵՏԱԼԵԶՈՒ**, միջանկյալ լեզու, որն օգտագործվում է որոշ դասի լեզուների ուսումնասիրության ու նկարագրության համար։ Մ. որոշակի կանոններով սահմանափակված բնական լեզվի համակարգ է, որտեղ բացակայում են բազմիմաստությունը, փոխանունությունը են։ Մ-ի գաղափարը ներմուծվեց ալգորիթմական՝ *ծրագրավորման լեզուների* ուսումնասիրության ու նկարագրության կապակցությամբ։ Մ-ի կիրառումը հնարավորություն տվեց մշակելու այդ լեզուներով գրված էլեկտրոնային հաշվողական մեքենաների ծրագրերի շարահյուսական վերլուծության ու վերահսկման ալգորիթմներ, որոնք հիմք ստեղծեցին մեքենաների մուտքային ու ելքային լեզուների տրանսլյատորների նախագծման ու իրականացման համար։ Եթե առկա է ձևային համակարգ, ապա նրա ճշգրիտ նկարագրությունը և քննությունը կարելի է կատարել Մ-ի միջոցներով, որոնք ամփոփվում են *մետատեսության* մեջ։ Օրինակ, մետամաթեմատիկան ձևային համակարգերի հատկությունների քննություն է, որը կատարվում է բովանդակային մաթեմատիկայի մեթոդներով որևէ Մ-ի շրջանակներում։ Որպես Մ. կարելի է օգտագործել հայերենը (կամ այլ բնական լեզու), ընդ որում այն օգտագործվելու է բովանդակային իմաստով, այսինքն՝ ոչ թե ձևային կանոնների, այլ բառիմաստների հիման վրա։ Ուսումնասիրվող լեզուն ա ռ ա ր կ ա յ ա կ ա ն լ ե զ ու է տվյալ Մ-ի նկատմամբ։ Առանձին դեպքերում թե՛ առարկայական լեզուն, թե՛ Մ. կարող են հանդես գալ որպես բնական լեզուներ։ Այսպես, եթե անգլերենի կամ ռուսերենի ուսումնասիրության (կամ ուսուցման) համար որպես օժանդակ լեզու օգտագործվում է հայերենը, ապա վերջինս կհամարվի Մ., իսկ անգլ. կամ ռուս.՝ առարկայական լեզուներ։ Հայերենի (այսինքն՝ Մ-ի) միջոցներով ձևակերպվում է մի մետատեսություն, որի նպատակն է տվյալ Մ-ի (այսինքն՝ հայերենի) օգնությամբ ներկայացնել ու մեկնաբանել առարկայական լեզվի (տվյալ դեպքում՝ անգլերենի կամ ռուսերենի) բառային կազմը, բառակազմական ու ձևակազմական օրենքները, շարահյուսությունը են։

Քանի որ առարկայական լեզվի ուսումնասիրության ու նկարագրության ժամանակ նրանում հանդիպող բոլոր օբյեկտներն ու երևույթներն արտահայտվելու են Մ-ի միջոցներով, ապա վերջինս պետք է՝ ա. ունենա բավարար միջոցներ առարկայական լեզվի առանձնահատկությունները նկարագրելու համար, բ. լինի այնչափ հարուստ, որ առարկայական լեզվի յուրաքանչյուր արտահայտություն համարժեքության մեջ դրվի Մ-ով գրված արտահայտության հետ, գ. պարունակի առարկայական լեզվից ոչ պակաս հարուստ տրամաբանական բառարան։ Նըշված պայմանների խախտման դեպքում առաջ են գալիս տարիմաստային մեկնաբանություններ։

*Գրկ.* Ռուռւտյան Ռ., Կիբեռնետիկան և լեզվաբանությունը, Ե., 1978։ Клини С. К., Введение в метаматематику, пер. с англ., М., 1957, гл. 1; Черч А., Введение в математическую логику, пер. с англ., т. 1, М., 1960 (введение); Карри Х. Б., Основания математической логики, пер. с англ., М., 1969, гл. 1—3. *Ռ. Ուռուտյան*

**ՄԵՏԱԼՈՒԴՆԵՐ** (< հուն. μέταλλον — մետաղ և εἶδώς — տեսք, ձև), տես *Ոչ մետաղներ*։

**ՄԵՏԱԼՈՒՐԳԻԱ** (< հուն. μεταλλυργέω — մշակում եմ մետաղներ), սկզբնական նեղ իմաստով՝ հանքաքարից մետաղների արտազատման արվեստ։ Արդի նշանակությամբ՝ գիտության ու տեխնիկայի բնագավառ և արդյունաբերության ճյուղ, որոնք ընդգրկում են հանքաքարից կամ այլ նյութերից մետաղների ստացման, ինչպես նաև դրանց քիմ. բաղադրության, կառուցվածքի և մետաղական համաձուլվածքների հատկությունների փոփոխման հետ կապված պրոցեսներ։ Մ-ին են վերաբերում նաև երկրի ընդերքից ստացված մետաղների ու համաձուլվածքների նախնական մշակման ու դրանց ձևի և հատկությունների փոփոխման պրոցեսները (*գլոում*, ձուլում, ճնշմամբ մշակում, ջերմամշակում են)։

Ժամանակակից տեխնիկայում տարբերում են սև և գունավոր Մ.։ *Սև մետալուրգիան* ընդգրկում է երկաթի հիմքով համաձուլվածքների՝ թուջի, պողպատի, ֆեռոհամաձուլվածքների արտադրությունը։ Մետաղների համաշխարհային արտադրանքի մոտ 95%-ը բաժին է ընկնում սև մետաղներին։ *Գունավոր մետալուրգիան* զբաղվում է մնացած բոլոր մետաղների և դրանց համաձուլվածքների արտադրությամբ։ Մետալուրգիական պրոցեսները կիրառվում են նաև կիսահաղորդիչների և ոչ մետաղների (սիլիցիում, գերմանիում, սելեն, թելուր, ծծումբ են) ստացման համար։ Ընդհանուր առմամբ ժամանակակից Մ. զբաղվում է Մենդելեևի պարբերական համակարգի գրեթե բոլոր տարրերով, բացառությամբ հալոգենների և գազերի։ Մ-ով մարդիկ զբաղվել են հնագույն ժամանակներից (մ. թ. ա. 7—6-րդ հազարամյակներ)։ Այդ են վկայում Փոքր Ասիայում պեղումների ժամանակ հայտնաբերված պղնձի հալման հետքերը։ Մ-ի հնագույն օջախներից է նաև Կովկասը։ Հիշատակության արժանի է *Մեծամորի* մետալուրգիական համալիրը։ Բնածին մաքուր մետաղների (ոսկի, արծաթ, պղինձ)՝ սկզբում սառը, ապա տաք կռմամբ մշակելուն զուգընթաց զարգացել է օքսիդացված պղնձաքարից պղնձի ստացման և ձուլված շինվածքների պատրաստման պրոցեսը (մ. թ. ա. մոտ 5—4-րդ հազարամյակներ)։ Սակայն օքսիդացված պղնձի հանքավայրերի սահմանափակ քանակը և պաշարների նվազումը պայմանավորեցին ավելի բարդ պրոցեսների կիրառմամբ սուլֆիդային հանքաքարի վերամշակման անհրաժեշտությունը։ Դրա շնորհիվ մեծացավ պղնձի և նրա համաձուլվածքների (*բրոնզներ*) ստացման ու օգտագործման ծավալը (բրոնզի դար)։

Մոտավորապես մ. թ. ա. 2-րդ հազարամյակի կեսերին մարդը սկսել է յուրացնել հանքաքարից երկաթի ստացման դժվարին ու աշխատատար պրոցեսը: Այդ նպատակով սկզբում կիրառում էին խարույկներ, իսկ հետագայում՝ հալման փոսեր, որոնց մեջ օդ ներփչելով (բնական հոսքով կամ փուքսերով) օքսիդների անմիջական վերականգնումով հանքաքարը վերածվում էր փափուկ, կռելի երկաթի (սպունգային երկաթ): Այս պրոցեսի հետագա զարգացումը (ածխածնով երկաթի հարստացումը, այսինքն՝ պողպատի ստացումը և մխումը) նպաստեց երկաթի ավելի լայն կիրառմանը (երկաթի դար): Երկաթի Մ-ի հետագա զարգացման շնորհիվ XIV դ. կեսերին սկսեցին կիրառվել դոմնային վառարաններ (տես *Դոմնային արտադրություն*), որոնցում ստացված թուջը վերամշակվելով վերածվում էր պողպատի (*Մարտենյան արտադրություն*, *Բեսեմերյան պրոցես* ևն): Պղնձի և երկաթի ստացումից բացի մարդիկ ծանոթ են եղել նաև ոսկու, արծաթի, անագի, կապարի և սնդիկի ստացման եղանակներին: Ո ս կ ու ստացումը և արծաթից դրա անջատումը սկսվել է մ. թ. ա. 2-րդ հազարամյակի կեսերին: Արծաթից և այլ խառնուկներից ոսկին մաքրելու համար կիրառել են օքսիդացման, քլորացման և զտման պրոցեսներ: Ոսկու Մ-ում ավելի ուշ սկսեցին կիրառել ամալգամը (տես *Ամալգամներ*) և ցիանացման պրոցեսները, որոնք այժմ էլ հանքաքարից ոսկու ստացման հիմնական եղանակներից են: Ոսկու կորզման համար կիրառվում են հանքաքարի ֆլոտացիոն և գրավիտացիոն հարստացման եղանակներ:

Ա ր ծ ա թ ի ստացումը մ. թ. ա. 2-րդ հազարամյակում կապված է եղել հալենիտից (կապարի հանքաքար) կապարի և արծաթի համաձուլվածքի ստացման և լիքվացիոն հալման եղանակով նրանց առանձնացման պրոցեսի հետ: Արդի պայմաններում արծաթը հիմնականում ստացվում է բազմամետաղ հանքաքարի մշակմամբ: Հնում ա ն ա գ ի ստացման տեխնոլոգիան բաղկացած է եղել հանքաքարի մանրման և պարզ պրոցեսներով հարստացման, պարզ հորանաձև վառարաններում հալման, լիքվացիոն և օքսիդացնող զտման պրոցեսներից: Ժամանակակից տեխնոլոգիան ընդգրկում է հանքաքարի կոմպլեքսային մշակման ավելի բարդ պրոցեսներ: Ս ն դ ի կ ի արտադրության առաջին եղանակները հիմնված էին հանքաքարի թրծման ժամանակ առաջացող գոլորշիների կոնդենսացման պրոցեսի կիրառման վրա:

Ժամանակակից Մ., որպես մետաղների և համաձուլվածքների արտադրության հիմնական տեխնոլոգիական գործողությունների համախումբ, ընդգրկում է՝ 1. հանքաքարի նախապատրաստումն ու հարստացումը. 2. հիմնական մետաղի կորզումը հրամետալուրգիական (տես *Հրամետալուրգիա*), հիդրոմետալուրգիական կամ էլեկտրոլիտային եղանակով, 3. հիմնական մետաղի մաքրումն ու զտումը, 4. հիմնական մետաղին ուղեկցող այլ մետաղների ու միացությունների ստացումը, 5. մետաղներից և համաձուլվածքներից ձուլուկների կամ ձուլվածքների ստացումը (տես *Ձուլման արտադրություն*), 6. ճնշմամբ մետաղների մշակումը (տես *Դարբնոցա-դրոշմիչ արտադրություն*), 7. եռակալման եղանակով մետաղական փոշիներից շինվածքների պատրաստումը (տես *Փոշեմետալուրգիա*), 8. բյուրեղաֆիզիկական կամ այլ ֆիզիկաքիմիական եղանակներով մետաղների զտումը և բարձր մաքրության, հատուկ հատկություններով մետաղների ստացումը, 9. մետաղների ջերմային, ջերմամեխանիկական մշակումը (տես *Ջերմամշակում մետաղների*), 10. պաշտպանական պատվածքների ստեղծումը: Մ-ի հետ սերտորեն կապված է կոքսաքիմիական և հրակայուն նյութերի արտադրությունը:

ՀՍՍՀ-ում զգալի զարգացում է ստացել պղնձի Մ. (*Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատ*), ալյումինի Մ. (*Քանաքեռի ալյումինի գործարան*), պղնձամոլիբդենային և բազմամետաղ հանքաքարերի հարստացման արտադրությունը (Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատ): Սկսում են կիրառում գտնել պղնձի փոշեմետալուրգիան և երկաթի ուղղակի վերականգնման պրոցեսները:

Ժամանակակից մետալուրգիական արտադրության համար բնորոշ են՝ հումքի լրիվ օգտագործումը, բազմամետաղ հանքաքարերի կոմպլեքսային մշակումը, արտադրության կազմակերպումն առանց թափոնների, արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման բարձր մակարդակը:

*Գրկ.* Основы металлургии, т. 1—7, М., 1961—75; Металловедение и термическая обработка стали, 2 изд., перераб. и доп., т. 1—2, М., 1961—62.

*Լ. Գասպարյան*

**ՄԵՏԱԿԵՆՏՐՈՆ**, կետ, որի դիրքից է կախված լողացող մարմնի հավասարակշռության կայունությունը: Հավասարակշռության դեպքում, լողացող մարմնի վրա մարմնի ծանրության կենտրոնում (ԾԿ) կիրառված P ծանրության ուժից բացի,




Լողացող մարմնի M մետակենտրոնի դիրքը կայուն (*ա*) և անկայուն (*բ*) հավասարակշռության դեպքում

ազդում է նաև A վերամբարձ ուժը, որի ազդման գիծն անցնում է այսպես կոչված ջրատարողության կենտրոնով՝ ՋԿ (մարմնի ընկղմված մասի ծավալով հեղուկի զանգվածի ծանրության կենտրոնը): Այն դեպքում, երբ լողացող մարմինն ունի սիմետրիայի երկայնական հարթություն, այդ հարթության և վերամբարձ ուժի ազդման գծի հատման կետն էլ կոչվում է Մ.: Մարմնի թեքվելու դեպքում Մ-ի դիրքը փոփոխվում է: Լողացող մարմնի հավասարակշռությունը կլինի կայուն, եթե Մ-ներից ամենաստորինը (երբեմն այն էլ անվանում են Մ.) գտնվում է մարմնի ծանրության կենտրոնից վեր:

**ՄԵՏԱԿՐԻԼԱԹԹՈՒ**, α-մ ե թ ի լ ա կ ր ի լ ա թ թ ու, $CH_2=C(CH_3)-COOH$, չհագեցած միահիմն կարբոնաթթու: Սուր հոտով, անգույն հեղուկ է, հալ. ջերմաստիճանը՝ 16°C, եռմանը՝ 160,5°C, խտությունը՝ 1015,3 *կգ/մ³* (20°C-ում): Լուծվում է ջրում և օրգ. լուծիչներում: Մ. նատրիումի ամալգամով վերականգնվում է իզոկարագաթթվի, հիմքերի և սպիրտների հետ առաջացնում է մ ե տ ա կ ր ի լ ա տ ն ե ր [$CH_2=C(CH_3)-COOR$]: Հեշտությամբ պոլիմերվում է՝ առաջացնելով պոլիմետակրիլաթթու, որն անգույն, փխրուն, խիստ խոնավածուծ նյութ է: Արդյունաբերության մեջ Մ. ստանում են ացետոնից և կապտաթթվից: Մ. և նրա ածանցյալներն օգտագործվում են պոլիմերային նյութեր ստանալու համար: Առավել նշանակություն ունի *մեթիլմետակրիլատը*, որն օգտագործվում է օրգ. ապակու, կարբօքսիլատային կաուչուկների, անբեկոր ապակու, սոսինձների, իոնափոխանակային խեժերի արտադրության մեջ: Պոլիմետակրիլաթթվի աղերն օգտագործվում են որպես էմուլգատորներ:

**ՄԵՏԱՂԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, *մետաղագիտության* բաժին. ուսումնասիրում է մետաղների և համաձուլվածքների կառուցվածքի փոփոխությունը՝ կախված նրանց քիմիական բաղադրության և մշակման պայմանների փոփոխումից: Մ-յան հիմնական ուղղություններն են՝ *մակրոկառուցվածքի*, *միկրոկառուցվածքի* և ատոմաբյուրեղային կառուցվածքի ուսումնասիրումը ռենտգենյան ճառագայթների օգնությամբ: Համաձուլվածքների մեխանիկական ու ֆիզիկական հատկությունները կախված են ոչ միայն նրանց քիմ. բաղադրությունից, կառուցվածքից և այս կամ այն ֆազի հարաբերական քանակից, այլև համաձուլվածքի տարբեր ֆազերի բյուրեղների ձևից, չափերից և փոխադարձ դասավորությունից: Մ-յան բնագավառում ուրույն տեղ ունի տ ա ր ա ծ ա չ ա փ ա կ ա ն Մ., որի հիմնադիրն է հայազգի գիտնական Ս. Ա. *Սալտիկովը*:

**ՄԵՏԱՂԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ**, մետաղային հանքավայրերի և հանքաերևակումների առկայությունը որոշակի շրջաններում կամ երկրաբանական գոյացումներում (ապարներում, հաստվածքներում, շերտախմբերում): Առաջին դեպքում տերմինը օգտագործվում է, երբ խոսքը վերաբերում է որևէ տարածքի, օրինակ, Ուրալի, Կենտրոնական Ղազախստանի, Փոքր Կովկասի Մ-յանը, իսկ երկրորդ դեպքում՝ եթե նկատի ունեն ինտրուզիվների, նստվածքային ապարների, տեկտոնական զոնաների Մ.: Հանքային նյութի կուտակումը սովորաբար տեղի է ունենում մագմատիկ հալոցքի ներդրման, օջախից ջրային և գազաջրային լուծույթների, գազերի անջատման ու գործունեության հետևանքով: Հանքաբեր լուծույթների առաջացումը և հանքավայրերի ձևավորման համար անհրաժեշտ մետաղային միացությունների կուտակումն ընթանում է երկրաբանական և ֆիզիկաքիմիական բարենպաստ պայմաններում:

**ՄԵՏԱՂԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ**, գիտություն, որն ուսումնասիրում է մետաղների և համաձուլվածքների բաղադրության, կառուցվածքի և հատկությունների միջև եղած կապը, ինչպես նաև տարբեր տեսակի ներգործությունների (քիմիական, ջերմային, մեխանիկական) հետևանքով առաջացող փոփոխությունների օրինաչափությունները: Որպես ինքնուրույն գիտություն Մ. ծագել և ձևավորվել է XIX դ.՝ *մետաղաբանություն* անվան տակ: «Մ.» տերմինը մտցվել է XX դ. 20-ական թթ. Գերմանիայում (Metallkunde), իսկ «մետաղաբանություն» տերմինն առաջարկվել է պահպանել միայն մետաղների և համաձուլվածքների միկրո- և մակրոկառուցվածքների ուսումնասիրման համար:

Մ-յան զարգացման առաջին փուլում (XIX դ. 70-ական թթ.) ուսումնասիրվել են մետաղների միկրոկառուցվածքը, տեխ. մետաղների և համաձուլվածքների հատկությունների վրա ջերմային մշակման ազդեցությունը: Ստեղծվել է մետաղական համակարգերի վերլուծության ֆիզիկաքիմիական եղանակ, ձևակերպվել են մետաղական նյութերի որակի գնահատման կարևորագույն չափանիշները, մշակվել որակյալ և լեգիրված պողպատի արտադրության հիմունքները: Մ-յան պատմության նոր փուլը սկսվել է XX դ. 20-ական թթ.՝ *ռենտգենակառուցվածքային վերլուծության* կիրառմամբ: Վերջինս հնարավորություն տվեց բացահայտելու մետաղների ատոմական կառուցվածքի՝ ջերմային, քիմ. և մեխանիկական մշակման հետևանքով առաջացած փոփոխությունների օրինաչափությունները: Մ-յան զարգացման այս ժամանակաշրջանը բնութագրվում է ֆիզիկայի նորագույն մեթոդների լայն օգտագործմամբ (տես *Մետաղաֆիզիկա*, *Էլեկտրոնագրաֆիա*, *Նեյտրոնագրաֆիա*): Ռենտգենակառուցվածքային վերլուծությունից բացի մետաղների ատոմաբյուրեղային կառուցվածքի ուսումնասիրման համար կիրառվում է էլեկտրոնային սպեկտրոսկոպիան, որը հնարավորություն է տալիս բացահայտելու համաձուլվածքների կառուցվածքի տեղային խախտումները (տես *Արատանշում*): Մ. պայմանականորեն բաժանվում է տեսականի և կիրառականի (տեխ.): Տեսական Մ. ուսումնասիրում է տարբեր ներգործություններից մետաղներում և համաձուլվածքներում տեղի ունեցող պրոցեսների հիմունքներն ու կառուցվածքի օրինաչափությունները: Տեսական Մ-յան հիմնական բաժիններն են. մետաղների և համաձուլվածքների մետաղական վիճակի և ֆիզիկական հատկությունների տեսությունը, բյուրեղացումը, մետաղներում և համաձուլվածքներում ֆազային հավասարակշռությունը, դիֆուզիան, պինդ վիճակում ֆազային փոխակերպումները, պլաստիկ դեֆորմացիայի, ամրության, քայքայման և վերաբյուրեղացման պրոցեսների տեսությունը: Կիրառական Մ-յան խնդիրներն են. մետաղական նյութերի կոնկրետ խմբերի (օրինակ, երկաթածխածնային համաձուլվածքների, կառուցվածքային պողպատի, չժանգոտող պողպատի, մագնեզիումի համաձուլվածքների ևն) բաղադրության, կառուցվածքի, մշակման տեխնոլոգիական պրոցեսների և հատկությունների ուսումնասիրությունը:

*Գրկ.* Физические основы металловедения, М., 1955; Лившиц Б. Г., Металлография. М., 1963; Физическое металловедение, пер. с англ., в. 1—3, М., 1967—68.

*Թ. Ղալանչյան*

**ՄԵՏԱՂԱԹԵՐՄԻԱ** (*մետաղներ* և հուն. θέρμη — ջերմություն), մետալուրգիայի բնագավառ, որի հիմքում ընկած են օքսիդներից և այլ միացություններից ավելի ակտիվ մետաղների միջոցով մետաղների վերականգնման պրոցեսները: Մ-ի ժամանակ անջատվում է մեծ քանակությամբ ջերմություն: Որպես մետաղական վերականգնիչ լայնորեն կիրառում են ալյումինը (*ալյումինաթերմիա*), իսկ ոչ մետաղներից՝ սիլիցիումը (*սիլիկաթերմիա*): Գոյություն ունեն մետաղաթերմիական պրոցեսի մի քանի տարատեսակներ. արտավառարանային (ռեակցիայի ջերմությունը բավարար է վերամշակվող նյութերի վերականգնման և հալեցման համար), էլեկտրավառարանային (ջերմության մի մասը մատուցվում է էլեկտրատաքացման միջոցով) և վակուումային (որոշ նյութերի բարձր ցնդելիության պատճառով պրոցեսը կատարվում է վակուումի պայմաններում):

*Գրկ.* Рысс М. А., Производство ферросплавов, М., 1968; Беляев А. И., Металлургия легких сплавов, 6 изд., М., 1970.

**ՄԵՏԱՂԱԽԵՑԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ**, նույնն է, ինչ *Փոշեմետալուրգիան*:

**ՄԵՏԱՂԱԾՆԱԿԱՆ ԳՈՏԻ**, մետաղաբեր տարածքներ, որոնք համընկնում են երկրագնդի տեկտոնական խոշորագույն գոտիների հետ, օրինակ՝ Խաղաղօվկիանոսյան, Միջերկրածովյան գոտիները: Մ. գ-ները կազմված են ավելի ցածր կարգի փոխկապակցված մետաղաբեր տարածքներից՝ մետաղածնական պրովինցիաներից: Մ. գ-ները կարող են ձևավորվել մի քանի տեկտոնամագմատիկ ցիկլերի կամ մետաղածնական դարաշրջանների ընթացքում, որոնցից յուրաքանչյուրը բնութագրվում է հանքայնացման որոշակի տիպերով: Խոշոր Մ. գ-ու երկարությունը կազմում է տասնյակ հազար *կմ*, լայնությունը՝ հարյուրավոր *կմ*, իսկ զբաղեցրած տարածությունը՝ 10—15 մլն *կմ²*: Որոշ երկրաբաններ առաջարկում են Մ. գ. համարել այն հանքաբեր տարածքները, որոնք չափերով ավելի փոքր են և համապատասխանում են մետաղածնական պրովինցիաներին (Ուրալյան, Մոնղոլա-Օխոտյան): Բազմաթիվ հետազոտողներ Խաղաղօվկիանոսյան և Միջերկրածովյան խոշորագույն գոտիների հետ մեկտեղ Մ. գ. են անվանում նաև Ուրալյանը, Սկանդինավյանը ևն:

**ՄԵՏԱՂԱԾՆԱԿԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆ**, հանքայնացման պրոցեսների զարգացման երկրաբանական ժամանակահատված, որը համապատասխանում է տեկտոնամագմատիկ ցիկլին (լեռնակազմական ժամանակաշրջանին): Մ. դ. հասկացությունն առաջարկել է դը Լոնեն, հետագայում Լինդգրենը մետաղածնական կամ հանքածնական դարաշրջաններ է անվանել ժամանակի այն հատվածները, որոնք նպաստավոր են եղել որոշակի օգտակար հանածոյի առաջացման համար: Այդ ժամանակահատվածները տևողությամբ և երկրաբանական բովանդակությամբ տարբեր են և մի դեպքում համապատասխանում են օրոգեն դարաշրջաններին (հերցինյան ևն), իսկ մյուս դեպքում՝ երկրաբանական ժամանակաշրջաններին (պալեոզոյան, յուրայի, կավճի Մ. դ.): Նախընտրելի է ծալքավոր մարզերի ներծին *մետաղածնության* հարցերով զբաղվող հետազոտողների մեծամասնության տեսակետը, որի համաձայն Մ. դ. համապատասխանում է տեկտոնամագմատիկ ցիկլին:

**ՄԵՏԱՂԱԾՆՈՒԹՅՈՒՆ**, մետաղային հանքավայրերի մասին ուսմունքի բաժին. ուսումնասիրում է հանքավայրերի բաշխման օրինաչափությունները ժամանակի և տարածության մեջ: Մ. սերտորեն կապված է երկրակեղևի առանձին մարզերի երկրաբանական զարգացման ընդհանուր ընթացքի հետ և պայմանավորված է հիմնական երկրաբանական գործոններով (մագմատիզմ, տեկտոնիկա, նստվածքակուտակում, լիթոլոգիա, մետամորֆիզմ, էրոզիա ևն): Դիտելով որևէ տարածքի սահմաններում հանքայնացման բաշխման կամ որևէ մետաղի հանքավայրերի տեղաբաշխման օրինաչափությունները, խոսում են տվյալ տարածքի (Ուրալ, Կենտրոնական Ղազախստան) կամ տվյալ մետաղի (ոսկի, անագ ևն) Մ-յան մասին:

**ՄԵՏԱՂԱԿԱՆ ԿԱՊ**, տես *Քիմիական կապ*:

**ՄԵՏԱՂԱԿԱՆ ԿՈՆՍՏՐՈՒԿՑԻԱՆԵՐ**, մետաղներից պատրաստված շինարարական կոնստրուկցիաների ընդհանուր անվանումը: Առավել տարածված են *պողպատե կոնստրուկցիաները*: Արդյունավետ են թեթև համաձուլվածքներից պատրաստված կոնստրուկցիաները: Տես նաև *Ալյումինե կոնստրուկցիաներ*:

**ՄԵՏԱՂԱՀԱՏ ԳՈՐԾԻՔՆԵՐ**, տաշեղահանման եղանակով մետաղե նախապատրաստուկ մշակելու գործիք: Տարբերում են հաստոցային և ձեռքի Մ. գ.: Ըստ տեխնոլոգիական նշանակման հաստոցային Մ. գ. բաժանվում են հետևյալ ենթախմբերի. կտրիչներ, *ֆրեզներ*, *միջածգիչներ*, ատամնահատիչ, պարուրակատաշիչ, անցքերի մշակման, հղկանյութային ու ալմաստային գործիքներ ևն (նկարը տես 476-րդ էջում): Ձեռքի գործիքների դասին են պատկանում հատիչները, նադֆիլները, մետաղասղոցները, քերանները ևն: Մ. գ-ի կտրող մասի պարամետրերի ընտրությունը կախված է մշակվող նյութի հատկություններից, կտրման պայմաններից և կտրման մակերևույթների առաջացման կինեմատիկայից: Մ. գ-ի կտրելու ունակությունը որոշվում է կտրող մասի նյութի հատկություններով: Առավել կարևոր ցուցանիշներից է նյութի *շիկակայունությունը*: Մ. գ-ի տեխնոլոգիական պարամետրերը կախված են կտրման խորությունից, մատուցումից, կտրման արագությունից (տես *Մետաղամշակում կտրումով*):

**ՄԵՏԱՂԱՀԱՏ ՀԱՍՏՈՑ**, *մետաղահատ գործիքներով* հիմնականում տաշեղահանման եղանակով շինվածքներ մշակելու մեքենա: Օգտագործվում է նաև ոչ մետաղական նյութեր (պլաստմասսաներ, ապակի, խեցենյութ ևն) մշակելու համար:




*Մետաղահատ գործիքների տեսակներ.* 1. անցահատ կտրիչ, 2. կարծր համաձուլվածքի թիթեղով կտրիչ, 3. պարուրակաձև գայլիկոն, 4. կարծր համաձուլվածքից սայրերով անցքակոկիչ, 5. կարծր համաձուլվածքից սայրերով գլանաձև ֆրեզներ, 6. որդնակային ֆրեզ, 7. ներպարուրակիչ, 8. արտապարուրակիչ, 9. ներդրովի ատամներով ճակատային ֆրեզ, 10. միջաձգիչ, 11. թործան, 12. շևեր-նշաձող, 13. ատամնահատ սանրիկ, 14. պարուրակահան գլխիկ, 15. ձևավոր ատամնաթործիչ գլխիկ

Ըստ կիրառվող կտրող գործիքի տեխնոլոգիական հատկանիշի և տեսակի Մ. հ-ները լինում են. խառատային, գայլիկոնիչ և ներտաշ, հղկիչ և չափաբերման, համակցված, ատամնա- և պարուրակամշակման, ֆրեզիչ, ռանդիչ, թործիչ և միջաձգիչ, կտրատող, տարբեր: Ըստ մասնագիտացման աստիճանի տարբերում են. ունիվերսալ (ընդհանուր նշանակման, դետալների մշակման ժամանակ զանազան գործողություններ կատարող), լայն նշանակման (լայն անվանացանկի շինվածքների վրա սահմանափակ թվով գործողություններ կատարող), մասնագիտացված (մեկ անվանման դետալների կամ նույնանման եզրաձև, բայց տարբեր չափսեր ունեցող մի քանի անվանումների դետալներ մշակող), հատուկ (նույն տիպաչափսի դետալներ մշակող) Մ. հ-ներ: Ըստ ավտոմատացման աստիճանի տարբերում են. *ավտոմատ գծեր*, ավտոմատ հաստոցներ (այդ թվում՝ թվային ծրագրային կառավարմամբ), որոնցում լիովին մեքենայացված են էներգիայի, նյութի և ինֆորմացիայի ստացման, փոխակերպման, հաղորդման և օգտագործման պրոցեսները, ավտոմատ աշխատանքային ցիկլով կիսաավտոմատ և ձեռքի կառավարման հաստոցներ:

**ՄԵՏԱՂԱՀԱՏ ՀԱՍՏՈՑՆԵՐԻ ՓՈՐՁԱՐԱՐԱԿԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏԻ ԱՆԴՐԿՈՎԿԱՍՅԱՆ ՄԱՍՆԱՃՅՈՒՂ (ՄՀՓԻԱՄ)** գիտահետազոտական (Երևան), ստեղծվել է 1961-ին՝ «*Հայմեքենաշինգիտահետազոտ*» կոնստրուկտորա-տեխնոլոգիական բաժնի հիման վրա: 1978-ից ինքնուրույն ինստ. է և «*Հայհաստոց*» միավորման գլխամասային կազմակերպությունը: 1971-ին ստեղծվել է ինստ-ի փորձնական բազան՝ Մոսկվայի «Ստանկոկոնստրուկցիա» գործարանի Երևանի մասնաճյուղը (1973-ից՝ Երևանի փորձնական հաստոցաշինական գործարան): ՄՀՓԻԱՄ-ն ունի ծրագրերի պատրաստման փնջային կենտրոն, հաշվողական կենտրոն, 5 գիտական բաժին (մետաղահատ հաստոցների հետազոտման, էլեկտրաքիմիական մշակման, հավասարակշռման և դիագնոստիկայի, հղկանյութային եղանակներով մշակման, էլեկտրաավտոմատիկայի) և 10 պրոբլեմային լաբորատորիա: 1978-ից ինստ-ը հրատարակում է գիտական աշխատությունների ժողովածու (Труды Закавказского филиала ЭНИМС): ՄՀՓԻԱՄ-ում մշակված հաստոցները թողարկվում են *Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանում* (16Տ02Պ, 16Տ02Ա և 9Ա711, 9712 մակնիշների հավասարակշռման հաստոցներ), Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանում (2Ե52, 2Լ53, 2Ա53ՈՒ մակնիշների շառավղային գայլիկոնիչ հաստոցներ), Բաքվի հաստոցաշինական գործարանում (4405, 4406, 4407 մակնիշների էլեկտրաքիմիական մշակման հաստոցների տեսականիում): Ինստ-ի բաժիններում նախագծված և փորձնական գործարանում ստեղծված «Արարատ-1», «Արարատ-2» մակնիշի էլեկտրաքիմիական հաստոցները առաքվել են ԳԴՀ, ԷՋ-105 մակնիշի հավասարակշռման ավտոմատ հաստոցը՝ ՉՍՍՀ և ԼԺՀ, ԷՋ-106 մակնիշի հղկանյութա-հեղուկային կիսաավտոմատ հաստոցը՝ ՍՍՀՄ տարբեր ձեռնարկություններին:

*Ռ. Աճեմյան*

**ՄԵՏԱՂԱՄՇԱԿՈՒՄ ԿՏՐՈՒՄՈՎ**, տաշեղահանման եղանակով մետաղների մշակման տեխնոլոգիական պրոցեսներ. կատարվում են կտրիչ գործիքներով՝ *մետաղահատ հաստոցների* վրա: Հիմնական տեսակներն են. շրջատաշումը, ռանդումը, գայլիկոնումը, լայնումը, միջաձգումը, ֆրեզումը և ատամնաֆրեզումը, *հղկումը*, *հոնինգումը* են: Կտրումով մետաղամշակման ամեն մի տեսակ բնութագրվում է կտրման ռեժիմով, որը բաղկացած է հետևյալ տարրերից. կտրման v արագություն, կտրման t խորություն և s մատուցում: Կտրման արագությունը գործիքի կամ նախապատրաստուկի արագությունն է գլխավոր շարժման ուղղությամբ, որի հետևանքով տեղի է ունենում նախապատրաստուկից տաշեղի անջատում: Մատուցումը արագությունն է մատուցման շարժման ուղղությամբ: Օրինակ, շրջատաշման ժամանակ (նկ.) կտրման արագությունը մշակվող նախապատրաստուկի տեղափոխման արագությունն է կտրիչի կտրող եզրի նկատմամբ, իսկ մատուցումը՝ նախապատրաստուկի մեկ պտույտի ընթացքում կտրիչի կտրող եզրի տեղափոխությունը (*մմ*-ով): Կտրման խորությունը մեկ անցքի ընթացքում հանվող մետաղի շերտի հաստությունն է (*մմ*-ով): Կտրումով մետաղամշակման դեպքում հանվող տաշեղը կարող է լինել տարրային, սահքի, կիսատման և մակաբեկման: Տաշեղագոյացման տարբեր գոտիներում մետաղի դեֆորմացիան տարբեր է: Այն ընդգրկում է նաև մշակված դետալի մակերևութային




*Կտրման ռեժիմի տարրերը շրջատաշման դեպքում.* 1. մշակվող մակերևույթ, 2. կտրման մակերևույթ, 3. մշակված մակերևույթ, D—մշակվող նախապատրաստուկի տրամագիծը, d—դետալի տրամագիծը մշակումից հետո, a և b—կտրվող շերտի հաստությունն ու լայնությունը

շերտը, որի հետևանքով վերջինս ձեռք է բերում *մակակոփում*, և առաջանում են դետալի որակի վրա ազդող ներքին (մնացորդային) լարումներ:

*Գրկ.* Панкин А. В., Обработка металлов резанием, М., 1961; Брюхов В. А., Павлов Э. Н., Расчет режимов резания и нормирование с помощью ЭВМ, М., 1969; Роман О. В., Левенцов А. А., Шелковский И. Ф., Обработка металлов резанием и станки, Минск, 1970.

*Է. Սարգսյան*

**ՄԵՏԱՂԱՄՇԱԿՈՒՄ ՃՆՇՄԱՄԲ**, տեխնոլոգիական պրոցես, որի հետևանքով տեղի է ունենում մետաղական նախապատրաստուկի ձևի փոփոխություն՝ պլաստիկ *դեֆորմացիայի* միջոցով (առանց տաշեղ հանելու): Հիմնական տեսակներն են *գլոցումը*, *մամլումը*, *քարշումը*, *կռումը* և *դրոշմումը* (տես *Դարբնոցա-դրոշմիչ արտադրություն*): Մ. ճ. կիրառում են նաև մակերևույթի որակը լավացնելու համար: Տարբերում են ճնշմամբ մետաղամշակման տաք և սառը եղանակներ: Տաք եղանակը բնութագրվում է ետդարձի և վերաբյուրեղացման երևույթներով, ամրացման (*մակակոփման*) բացակայությամբ, մետաղի մեխանիկական և ֆիզիկաքիմիական հատկությունների աննշան փոփոխությամբ: Սառը եղանակն ուղեկցվում է ամրացմամբ, որի հետևանքով փոխվում են մետաղի մեխանիկական և ֆիզիկաքիմիական բնութագրերը: Օգտագործելով ճնշմամբ մետաղամշակման ազդեցությունը մետաղի հատկությունների վրա, կարելի է նվազագույն զանգվածի դեպքում պատրաստել լավագույն հատկություններով օժտված դետալներ: Ճնշմամբ մետաղամշակման օպերացիաների և դեֆորմացման պայմանների ճիշտ ընտրությունը թույլ է տալիս ոչ միայն մեծացնել ձևի թույլատրելի փոփոխությունը, այլև կիրառել Մ. ճ. բարձրամուր, դժվար դեֆորմացվող համաձուլվածքներից դետալներ պատրաստելու համար:

Ճնշմամբ մետաղամշակման տեխնոլոգիական պրոցեսների նախագծման և կառավարման գիտական հիմունքները տալիս է ճնշմամբ մետաղամշակման տեսությունը և *պլաստիկության տեսությունը*:

**ՄԵՏԱՂԱՅԻՆ ՕԳՏԱԿԱՐ ՀԱՆԱԾՈՆԵՐ**, մեկ կամ մի քանի մետաղներ պարունակող հանքանյութերի բնական կուտակումներ, որոնց մշակումից տնտեսապես շահավետ եղանակով հնարավոր է մետաղ ստանալ: Մ. օ. հ-ի հանքանյութերը արդյունաբերության մեջ օգտագործման բնագավառներով ստորաբաժանվում են հետևյալ խմբերի՝ 1. սև մետաղներ՝ երկաթ, մանգան, քրոմ, 2. հազվագյուտ մետաղներ՝ տիտան, վանադիում, նիկել, կոբալտ, մոլիբդեն, վոլֆրամ, անագ, բիսմութ, մկնդեղ, ծարիր, սնդիկ, 3. գունավոր մետաղներ՝ պղինձ, կապար, ցինկ, ալյումին, մագնեզիում (վերջին երկուսը հաճախ միավորվում են թեթև մետաղների խմբում), 4. ազնիվ մետաղներ՝ արծաթ, ոսկի, պլատին և պլատինի խմբի մետաղներ՝ պալադիում, օսմիում, իրիդիում, ռոդիում, ռութենիում, 5. ռադիոակտիվ մետաղներ՝ ուրան, թորիում, ռադիում, 6. ցրված և հազվագյուտ հողային մետաղներ: Մ.օ. հ-ի հանքավայրերն ըստ առաջացման պայմանների լինում են՝ 1. խորքային՝ մագմատիկ և ետմագմատիկ (պեգմատիտային, կոնտակտային կամ սկառնային, հիդրոթերմալ), 2. մակերեսային՝ հողմահարման ու նստվածքային, և 3. մետամորֆային: Բուն մագմատիկ պայմաններում (մագմատիկ հալոցքի բյուրեղացման հետևանքով) առաջանում են երկաթաքարի (գաբբրոներում և պիրոքսենիտներում), քրոմի (սերպենտինիտներում), բնածին պլատինի (դունիտներում) հանքանյութերը: Ետմագմատիկ հանքանյութերն առաջանում են մագմայից անջատվող հանքաբեր գազանման լուծույթներից: Երկրի մակերեսային պայմաններում հողմահարման պրոցեսների հետևանքով կարող են առաջանալ օգտակար հանածոների հետևյալ տիպերի կուտակումներ՝ 1. «գլխարկներ» սուլֆիդային հանքավայրերում, 2. «հողմահարման կեղև» ապարներում, 3. ինֆիլտրացիոն հանքավայրեր և 4. էլյուվիալ ու դելյուվիալ կուտակումներ: Կարևոր նշանակություն ունեն պղնձի, ոսկու, մանգանի, երկաթի, նիկելի և այլ *մետաղների հանքանյութերը*: Նստվածքային հանքանյութերն առաջանում են ջրային ավազանների հատակին, ձևավորելով երկաթի, մանգանի, ալյումինի, պղնձի արդ. կուտակումներ: Մետամորֆային հանքանյութերը առաջացնում են երկաթի, մանգանի, ոսկու հսկայական հանքավայրեր: Մ. օ. հ-ից յուրաքանչյուրի համար բացահայտված են որոշակի ծագումնային պայմաններ, որոնց դեպքում բնական պրոցեսների շնորհիվ այն առաջացնում է զգալի կուտակումներ, ինչպես նաև հանքավայրերի տիպեր, որոնք ունեն առավել արդ. նշանակություն:

**ՄԵՏԱՂԱՉԱՓԱԿԱՆ ՀԱՆՈՒՅԹ**, լիթոերկրաքիմիական հանույթ, օգտակար հանածոների որոնման կարևորագույն երկրաքիմիական մեթոդ. հիմնված է ապարների և նրանց հողմահարման արգասիքների քիմիական կազմի պլանաչափ հետազոտության վրա: Մ. հ. հնարավորություն է ընձեռում բացահայտել օգտակար հանածոյի անտեսանելի հատկանիշները որոշակի ցանցով վերցված նմուշների գերզգայուն (օրինակ, սպեկտրալ) էքսպրես վերլուծության միջոցով: Դրա հետևանքով հայտնաբերվում են լիթոերկրաքիմիական անոմալիաներ՝ օգտակար հանածոյի արժեքավոր կամ ուղեկցող տարրերի բարձր (սակավ՝ ցածր) պարունակություններ: Այդ անոմալիաների մեջ երկրաբանահորոնողական նշանակություն ունեն երկրորդային (հիպերգեն) հոսքերն ու ցրման պսակները, որոնք առաջանում են հողմահարման կեղևում հանքային տարրերի միգրացման շնորհիվ, և հանքավայրերի առաջնային, մասնավորապես ներծին, պսակները, որոնք ձևավորվում են հանքառաջացման պրոցեսում: Մանրազնին ուսումնասիրությունից հետո, բարենպաստ երկրաբանական գնահատման դեպքում, լիթոերկրաքիմիական անոմալիայի զոնայում տրվում են հանքափորվածքներ կամ հորատանցքեր օգտակար հանածոյի բացման և հետագա արդ. գնահատման համար: Մ. հ. իրականացվում է երկրաբանահետախուզական աշխատանքների բոլոր փուլերում: Այն սովորաբար զուգակցվում է նույն կամ մոտ մասշտաբի երկրաբանական և երկրաֆիզիկական հանույթների հետ: Մ. հ-ի տվյալներով կազմվում են քարտեզներ, կտրվածքներ, գրաֆիկներ, որոնց վրա, հաշվի առնելով տեղական երկրաքիմիական ֆոնի (Сф) վիճակագրական պարամետրերը և հանքահսկող ստրուկտուրաների ուղղությունը, առանձնացվում են լիթոերկրաքիմիական անոմալիաներ: Մ. հ-ի օգնությամբ ՍՍՀՄ-ում և արտասահմանում հայտնաբերվել են գունավոր և հազվագյուտ մետաղների բազմաթիվ հանքավայրեր:

**ՄԵՏԱՂԱՊԱՏՈՒՄ**, 1. Մ. փոշիացումով՝ փոշիացված մետաղի շերտով տարբեր նյութերից պատրաստված շինվածքների պատում: Մետաղը փոշիացվում է հալած վիճակում՝ հատուկ սարքերով: Կիրառվում է դեկորատիվ նպատակով (մետաղե, փայտե և այլ շինվածքների Մ.), մետաղե շինվածքի մակերևույթների արատները շտկելու, մաշակայունությունը և կոռոզիակայունությունը բարձրացնելու համար: 2. Դիֆուզիոն Մ.՝ դիֆուզիայի եղանակով զանազան տարրերով (առավելապես մետաղներով) մետաղե շինվածքների մակերևութային շերտերի հագեցում: Կատարվում է բարձր ջերմաստիճանի պայմաններում: Հիմնական նպատակն է շինվածքի կրակահեստության, կոռոզիակայունության, թթվահեստության, կարծրության և մաշակայունության բարձրացումը:

**ՄԵՏԱՂԱՓՈՐՁԱԿԱՆ ՎԵՐԼՈՒԾՈՒԹՅՈՒՆ**, մետաղահարգորոշման արվեստ, ոսկերչական իրերում, գալվանական ծածկույթներում, համաձուլվածքներում, հանքանյութերում, թափոններում և այլ նյութերում մետաղների (առավելապես ազնիվ) քանակական պարունակությունը որոշելու եղանակ: Հայտնի էր դեռևս Հին Եգիպտոսում (մ. թ. ա. 2000 թ.), ավելի ուշ՝ Բաբելոնում, Հունաստանում, Հռոմում և օգտագործվում էր ոսկու պարունակությունը հանքաքարերում որոշելու նպատակով: Ռուսաստանում լայնորեն կիրառվել է Պետրոս Մեծի օրոք: Մ. վ-յան եղանակները ճշգրիտ են և օգտագործվում են արբիտրաժային նպատակներով, ինչպես նաև այլ մեթոդներով ստացված տվյալները ստուգելու համար: Մ. վ-յան տվյալներն ունեն իրավական ուժ: Կարելի է որոշել, օրինակ, ոսկու պարունակությունը հանքաքարերում, եթե այն 0,05—0,1 *գ/տ*-ից փոքր չէ: Մ. վ. իրականացնում են հրամետալուրգիական և քիմիական եղանակներով: Հրամետալուրգիական եղանակներ են տիգելային (հալքանոթային) և շերբերային հալումը, ինչպես նաև կուպելացումը՝ բաժանող հնոցներում: Մ. վ-ի մեթոդները կիրառվում են, եթե ազնիվ մետաղի պարունակությունը $10^{-1}$—$10^{-2}$ *գ/տ* է: Մյուս դեպքերում օգտագործվում են քիմ. եղանակները: Ոսկերչական իրերի հարգը որոշելու համար օգտագործվում է հարգորոշման արագընթաց, իրի ամբողջականությունը չխախտող եղանակը: *Ա. Քանքանյան*

**ՄԵՏԱՂԱՕՊՏԻԿԱ**, *օպտիկայի* բաժին, որն ուսումնասիրում է *մետաղների* օպտիկական հատկությունները: Մետաղների բնորոշ առանձնահատկություններից են անդրադարձման մեծ ունակությունը (օրինակ, նատրիումի անդրադարձման գործակիցը՝ R=99,8%) և ուժեղ կլանումը, որոնք պայմանավորված են մետաղներում մեծ թվով ազատ էլեկտրոնների առկայությամբ: Նշված հատկությունները դրսևորվում են փոքր հաճախականության էլեկտրամագնիսական ալիքների դեպքում, իսկ բարձր հաճախականությունների տիրույթում (ուլտրամանուշակագույն, ռենտգենյան ճառագայթներ) սկսում են զգալի դեր խաղալ ներքին «կապված» էլեկտրոնները, որոնց պատճառով փոխվում են մետաղի բնորոշ օպտիկական հատկությունները: Օրինակ, արծաթը տեսանելի տիրույթում լավ կլանիչ է և ունի անդրադարձման մեծ գործակից (95%), մինչդեռ ուլտրամանուշակագույն տիրույթում խիստ ընկնում է ինչպես անդրադարձման (4,2%՝ λ=3160Å-ի համար), այնպես էլ կլանման ունակությունը: Մ-ի երևույթները նկարագրող բոլոր առնչություններն ստացվում են օպտիկայի հայտնի օրենքներից՝ փոխարինելով սովորական բեկման ցուցիչը (n) կոմպլեքս բեկման ցուցիչով՝ $n'=\sqrt{\varepsilon'}=n(1-i\varkappa)$, որտեղ $\varkappa$-ն կլանման գործակիցն է, $\varepsilon'$-ը՝ կոմպլեքս դիէլեկտրիկ թափանցելիությունը: Մետաղի օպտիկական հաստատունների (n և $\varkappa$) և էլեկտրական բնութագրերի (դիէլեկտրիկ թափանցելիություն՝ ε, էլեկտրահաղորդականություն՝ σ) կապն արտահայտվում է $n^2(1-\varkappa^2)=\varepsilon$ և $n^2\varkappa=\sigma/\nu$ առնչություններով, որտեղ ν-ն լույսի հաճախականությունն է: Օգտվելով *Ֆրենելի բանաձևերից* և կոմպլեքս բեկման ցուցչի արտահայտությունից՝ կարելի է ստանալ անդրադարձման գործակիցը (լույսի ուղղահայաց անկման դեպքի համար).

$$R=\frac{(n-1)^2+n^2\varkappa^2}{(n+1)^2+n^2\varkappa^2}$$

Մետաղի բեկման ցուցչի կոմպլեքս արտահայտությունը հաշվի առնելիս, անդրադարձած (բեկված) ալիքի ամպլիտուդը կոմպլեքս է դառնում, այսինքն՝ անդրադարձած (բեկված) և ընկած ալիքների բաղադրիչների միջև առաջանում է փու-

լերի տարբերություն, որը փոխուղղահայաց բևեռացած բաղադրիչների համար միատեսակ չէ: Այդ պատճառով հարթբևեռացած լույսը մետաղից անդրադառնալիս վերածվում է էլիպսային բևեռացման լույսի: Այդպիսի բևեռացման բնույթը կախված է մետաղի օպտիկական բնութագրերից, ուստի բևեռացման չափումները հնարավորություն են տալիս որոշել մետաղի բեկման ցուցիչը, կլանման գործակիցը:

*Գրկ.* Соколов А. В., Оптические свойства металлов, М., 1961; Борн М., Вольф Э., Основы оптики, пер. с англ., М., 1970.

*Ժ. Նիկոլյան*

**ՄԵՏԱՂԱՖԻԶԻԿԱ**, *ֆիզիկայի* բաժին, որն ուսումնասիրում է *մետաղների* ու *համաձուլվածքների* էլեկտրոնային և ատոմաբյուրեղային կառուցվածքը, ինչպես նաև դրանց ֆիզիկական հատկությունները: Մ. պայմանականորեն կարելի է տրոհել երեք բաժինների, որոնք իրարից տարբերվում են հետազոտման մեթոդներով և խնդիրներով: Առաջին բաժինը վերաբերում է մետաղներում և համաձուլվածքներում ֆազային հավասարակշռության պայմանների, տարբեր պրոցեսների կինետիկայի ուսումնասիրությանը, երկրորդը՝ մետաղների և համաձուլվածքների ամրությա́ն ու պլաստիկության հարցերի ուսումնասիրությանը՝ կապված ցանկալի հատկություններով նյութեր ստանալու անհրաժեշտության հետ: Նշված երկու բաժինները կազմում են այսպես կոչված տեսական *մետաղագիտության* հիմքը: Երրորդ բաժինը վերաբերում է ժամանակակից Մ-ի հիմքը կազմող միկրոսկոպիկ տեսությանը, որը հնարավորություն է տալիս բացատրելու մետաղների, հիմնականում նաև համաձուլվածքների ֆիզիկական հատկությունները՝ ելնելով դրանց ատոմական կառուցվածքից: Միկրոսկոպիկ տեսության պարզագույն տարբերակը, որը հայտնի է մետաղների դասական էլեկտրոնային տեսություն անունով, 1900-ական թթ. մշակել են Պ. *Դրուդեն* և Հ. *Լորենցը*: Ըստ այդ տեսության, էլեկտրոնները մետաղում կազմում են էլեկտրոնային իդեալական գազ և իրենց քաոսային շարժման ընթացքում ժամանակ առ ժամանակ բախվում են միայն բյուրեղային ցանցի հանգույցներում «նստած» իոններին: Այդ մոդելով տրվեց Օհմի և Ջոուլ-Լենցի փորձնական օրենքների տեսական հիմնավորումը: Դասական էլեկտրոնային տեսությունը հաստատեց նաև մետաղի էլեկտրոնային հաղորդականության ($\sigma$) և ջերմահաղորդականության ($\varkappa$) միջև գոյություն ունեցող պարզ կապը ($\varkappa/\sigma T=\mathrm{const}$), որը բավարար ճշտությամբ մեծ թվով մետաղների համար համընկնում է փորձնական արդյունքներին (100—400K ջերմաստիճանային տիրույթում): Սակայն դասական էլեկտրոնային տեսությունը, լինելով խիստ մոտավոր, ի վիճակի չէր բացատրելու փորձերից հայտնի դարձած մի շարք կարևոր փաստեր (օրինակ, բարձր ջերմաստիճաններում մետաղների և դիէլեկտրիկների ջերմունակությունների գործնականում իրար հավասար լինելը են): Էլեկտրոնային ազատ գազի մոդելը զարգացրել է Ա. *Զոմմերֆելդը* (1927), առաջին անգամ էլեկտրոնների համար կիրառելով քվանտային վիճակագրական բաշխման ֆունկցիան (Ֆերմի-Դիրակի ֆունկցիա), որում հաշվի էին առնված միկրոմասնիկների համար գործող նոր սկզբունքները՝ *նույնականության սկզբունքը* և *Պաուլիի սկզբունքը*: Քվանտային վիճակագրության կիրառումը հանգեցրեց կարևոր արդյունքի. պարզվեց, որ մետաղների էլեկտրական, ջերմային, ինչպես նաև սպինային պարամագնիսական հատկությունները պայմանավորված են ոչ թե բոլոր ազատ էլեկտրոններով, այլ միայն $E_F$ Ֆերմիի էներգիայի շրջակայքի շատ նեղ՝ kT էներգետիկական տիրույթում գտնըվող էլեկտրոններով: Էլեկտրոնային գազի այդպիսի ուժեղ «այլասերման» պատճառով էլեկտրոնները բարձր ջերմաստիճաններում նկատելի ներդրում չեն ունենում ջերմունակության մեջ: Ցածր ջերմաստիճաններում մետաղի ջերմունակությունը կարելի է ներկայացնել ցանցային ($C_g$) և էլեկտրոնային ($C_{էլ}$) բաղադրիչների գումարի տեսքով՝ $C=C_g+C_{էլ}$, որտեղ $C_g\sim T^3$, իսկ $C_{էլ}\sim T$: Ընդ որում, ջերմաստիճանից գծայնորեն կախված էլեկտրոնային անդամը փորձում դիտվում է միայն շատ ցածր՝ մի քանի K կարգի ջերմաստիճաններում: 1928-ին Վ. *Պաուլին* ուսումնասիրել է այլասերված էլեկտրոնային գազի պարամագնիսական հատկությունները, իսկ 1930-ին Լ. *Լանդաուն* ցույց է տվել, որ ազատ էլեկտրոններն օժտված են նաև դիամագնիսականությամբ, որը կազմում է սպինային պարամագնիսականության 1/3 մասը:

Քանի որ մետաղներն այլասերված հաղորդիչներ են, ուստի էլեկտրոնային գազի խտությունը գործնականում կախված չէ ջերմաստիճանից: Հետևաբար, մետաղների տեսակարար դիմադրության ($\rho$) կախումը ջերմաստիճանից ամբողջությամբ պայմանավորված է էլեկտրոնների շարժունակության ջերմաստիճանային կախումով: Նկ. 1-ում տրված է համեմատաբար մաքուր մետաղների տեսակարար դիմադրության որակական կախումը ջերմաստիճանից: Բարձր ջերմաստիճաններում՝ գծային, ինչպես նաև ցածր ջերմաստիճաններում՝ հինգերորդ աստիճանի կախումները պայմանավորված են ֆոնոնային ցրման մեխանիզմով: Բացարձակ զրոյին մոտ ջերմաստիճաններում, որտեղ գերակշռող նշանակություն է ստանում էլեկտրոնների ցրումը խառնուրդներից, $\rho$-ն դադարում է կախված լինել ջերմաստիճանից (Մատիսենի կանոն):




Նկ. 1. մետաղների տեսակարար դիմադրության կախումը ջերմաստիճանից

Մետաղական վիճակի հետևողական տեսության կառուցմա́ն համար անհրաժեշտ է հաշվի առնել երկու կարևոր հանգամանք՝ էլեկտրոնների փոխազդեցությունը ցանցի պարբերական դաշտի հետ և էլեկտրոնների փոխազդեցությունը միմյանց հետ: Առաջին փոխազդեցության հաշվառումը (Բլոխ, Բրիլյուեն, 1929—30) հանգեցրեց *գոտիների տեսության* ստեղծմանը: Բյուրեղային ցանցի դաշտի պարբերականությունից բխում է Համիլտոնի օպերատորի տրանսլյացիոն ինվարիանտությունը: Դա թույլ է տալիս էլեկտրոնի ալիքային ֆունկցիան ներկայացնել

$$\psi_{l,\vec{p}}(\vec{r})=\exp\left(\frac{i\vec{p}\vec{r}}{\hbar}\right)U_{l,\vec{p}}(\vec{r})$$

տեսքով, որտեղ l-ը թույլատրելի գոտու համարն է, $\vec{p}$-ն՝ քվազիիմպուլսը, իսկ $U(\vec{r}+\vec{a})=U(\vec{r})$-ը պարբերական ֆունկցիա է ըստ ցանցի $\vec{a}$ հաստատունի: Այստեղից պարզորոշ երևում է ազատ էլեկտրոնի իմպուլսի և քվազիիմպուլսի նմանությունը, սակայն, ի տարբերություն իմպուլսի, քվազիիմպուլսը միարժեքորեն որոշված չէ: Այսպիսով, էլեկտրոնի վիճակը պարբերական դաշտում նկարագրվում է l և $\vec{p}$ քվանտային թվերի հավաքածուով: Ըստ գոտիների տեսության՝ մետաղների էլեկտրական, ջերմային, մագնիսական և այլ հատկություններ որոշվում են մասնակիորեն լրացված գոտում գտնվող հաղորդականության էլեկտրոնների դինամիկական և ստատիկական հատկություններով: Ընդ որում, հաղորդականության էլեկտրոնների դինամիկական հատկությունները պայմանավորված են դիսպերսիայի $\mathcal{E}(\vec{p})$ օրենքով, ըստ որի էներգիան կարող է ամենաբարդ ձևով կախված լինել քվազիիմպուլսից: Գործնականում ավելի նպատակահարմար է դիտարկել ոչ թե էներգիայի կախումը քվազիիմպուլսից, այլ իզոէներգետիկական մակերևույթները՝ $\mathcal{E}(\vec{p})=\mathcal{E}$, որոնք նույնպես լրիվ բնութագրում են դիսպերսիայի օրենքը: Եվ քանի որ բոլոր երևույթներում էական դեր են խաղում Ֆերմիի էներգիային մոտ էներգիաներով ($\mathcal{E}=E_F$) մասնիկները, ուստի դրսևորվում են էլեկտրոնների դիսպերսիայի օրենքի այն կողմերը, որոնք կապված են $\mathcal{E}(\vec{p})$-ի վարքի հետ՝ $\mathcal{E}(\vec{p})=E_F$ Ֆերմիի մակերևույթի մոտ: Գոյություն ունեն Ֆերմիի մակերևույթի որոշման ժամանակակից մի շարք փորձարարական մեթոդներ: Դրանց հիմքում ընկած են այնպիսի երևույթներ, ինչպիսիք են դե Հաազի-վան Ալվենի էֆեկտը, դիմադրության փոփոխությունը մագնիսական դաշտում, անոմալ սկին էֆեկտը, ուլտրաձայնային ռեզոնանսը ևն: Նկ. 2-ում պատկերված է պղնձի Ֆերմիի մակերևույթը ըստ Պիպարդի չափումների: Մետաղների էլեկտրոնային տեսությունը կառուցելիս ամենաբարդը միջէլեկտրոնային փոխազդեցության հաշվառումն է: Այդ տեսակետից առավել արդյունավետ է Լանդաուի մշակած մոտեցումը, ըստ որի՝ էլեկտրոնային գազի հեղուկ աստիճանական անցման ժամանակ էլեկտրոնի վիճակը բյուրեղում նորից կարելի է նկարագրել $\vec{p}$ և l քվանտային

թվերի հավաքածուով: Այդպիսի գազում մասնիկների դերը կատարում են տարրական գրառումները՝ *քվազիմասնիկները*:



Նկ. 2. պղնձի Ֆերմիի մակերևույթը ըստ Պիպարդի չափումների

*Գրկ.* Бете Г., Зоммерфельд А., Электронная теория металлов, пер. с нем., М.—Л., 1938; Лифшиц И. М., Азбель М. Я., Каганов М. И., Электронная теория металлов, М., 1971; Шульце Г., Металлофизика, пер. с нем, М., 1971.

*Է. Ղազարյան*

**ՄԵՏԱՂԵ ՇԻՆՎԱԾՔՆԵՐ**, ընդհանուր նշանակման դետալներ: Պայմանականորեն Մ. շ-ի շարքին են դասում սառը գլոցման ժապավենները, մետաղալարը և դրանից պատրաստված շինվածքները (օրինակ, պողպատե ճոպաններ, մեխեր), ինչպես նաև ամրակման դետալները (երիթ, պտուտակ, հեղույս, մանեկ, գամ ևն): Մ. շ-ի արտադրությունը սև մետալուրգիայի և մետաղամշակման ինքնուրույն բնագավառներից է:

**ՄԵՏԱՂԻ ԱՐԱՏՆԵՐ**, տեխնիկական պայմաններով նախատեսված որակից *մետաղի* քիմիական բաղադրության, կառուցվածքի, հոծության, մակերևույթի վիճակի, մեխանիկական և այլ հատկությունների շեղումը:

Մ. ա. առաջանում են մետաղի ստացման կամ մշակման տեխնոլոգիայի անկատարելության կամ տեխնոլոգիական խախտումների հետևանքով: Մետաղի հալման կամ ձուլման ժամանակ առաջացած Մ. ա-ից առավել բնորոշ են ոչ մետաղական ներխառնուկները, կծկման փչուկները, լիքվացիաները, գազային ծակոտիները, խոռոչները ևն: Գլոցման, կոման, դրոշմման դեպքում տարածված արատներից են՝ շերտավորումը, ֆլոկենները (բարակ ճաքեր), մազաճեղքերը, դարձածալերը, կռափակումները ևն: Ջերմամշակման և քիմիական-ջերմային մշակման ժամանակ գոյացող Մ. ա-ից են՝ ճաքերը, այրուքը, օքսիդացումը, ածխածնազրկումը, մեծացված փխրունությունը ևն: Եռակցման և զոդման պրոցեսում կարող են առաջանալ ճաքեր, թերաեռք, կոռոզիայի հետքեր ևն: Մ. ա-ի մի մասը կարելի է վերացնել արտադրության հետագա փուլերում կամ լրացուցիչ մշակմամբ: Կախված շինվածքի աշխատանքի պայմաններից՝ Մ. ա. կարող են լինել թույլատրելի և ոչ թույլատրելի: Օրինակ, ներքին մանր խոռոչները վտանգավոր չեն դանդաղընթաց ատամնանիվներ պատրաստելու դեպքում, բայց չեն թույլատրվում արտաքին պարուրակիչներ պատրաստելու ժամանակ: Ստատիկ բեռնվածքով աշխատող շինվածքների համար փոքր խազերը, ճաքերը և գործիքի հետքերը նշանակություն չունեն, սակայն միանգամայն անթույլատրելի են, եթե այդ շինվածքները պետք է աշխատեն ցիկլային-կրկնվող բեռնվածքի ներգործությամբ: Այդ դեպքում նշված արատները կարող են ծառայել որպես հոգնածային բնույթի քայքայման օջախներ: Մ. ա. բացահայտում են *արատանշումով*:

*Թ. Ղազանչյան*

**ՄԵՏԱՂՅԱ ՇԻՆՎԱԾՔՆԵՐԻ («ՄԵՏՇԻՆ») ԳՈՐԾԱՐԱՆ** Երևանի, ՀՍՍՀ տեղական արդյունաբերության մինիստրության ձեռնարկություն: Հիմնադրվել է 1955-ին: Արտադրում է մետաղալար, մետաղյա գամեր, կռճգամեր, ցանց, պնդօղակներ, ամրակներ, փայտապտուտակներ ևն: Հիմնական հումքը ստանում է Կրիվոյ ռոգի Վ. Ի. Լենինի անվ. մետալուրգիական գործարանից: 1980-ին, 1958-ի համեմատ, արտադրության ծավալն աճել է 16,5 անգամ, կազմել 6 մլն ռ.: Թողարկվող արտադրանքը սպառվում է ՀՍՍՀ-ում, առաքվում միջինասիական ու անդրկովկասյան հանրապետություններ: Նոր արտադրատեսակների մշակմամբ և տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործմամբ զբաղվում է վերադաս մինիստրության գիտաարտադրական միավորումը:

**ՄԵՏԱՂՆԵՐ**, քիմիական տարրեր, որոնց ատոմների արտաքին (արժեքական) էլեկտրոնները համեմատաբար թույլ են կապված միջուկի հետ և այդ պատճառով ունեն յուրահատուկ ֆիզիկական և քիմիական հատկություններ: Պարզ նյութեր են, էլեկտրականության և ջերմության լավ հաղորդիչներ, անդրադարձնում են էլեկտրամագնիսական ճառագայթները (թափանցիկ չեն, ունեն բնորոշ փայլ), պլաստիկ են (կռելի), էլեկտրահաղորդականության ջերմաստիճանային գործակիցը բացասական է: Այդ առանձնահատկությունները պայմանավորված են Մ-ի ատոմների կառուցվածքով և Մ-ի բյուրեղներում ատոմների միջև մետաղական կապի գոյությամբ (տես *Քիմիական կապ*): Մետաղական կապը առաջացման բնույթով նման է կովալենտ կապին, սակայն ատոմները միմյանց կապող էլեկտրոնները պատկանում են ոչ թե մի քանի որոշակի ատոմների, այլ բյուրեղում գտնվող բոլոր ատոմներին: Մ-ի բյուրեղական ցանցը բաղկացած է դրական իոններից և մասամբ նաև չեզոք ատոմներից: Չեզոք ատոմներից անընդհատ (առանց էներգիայի ծախսի) իոններին անցնող էլեկտրոնները միջատոմական տարածություններում ստեղծում են էլեկտրոնային «գազ», որն իրար է «կապում» հանգույցներում գտնվող դրական իոնները: Էլեկտրոնների կոնցենտրացիան Մ-ի բյուրեղում $10^{22}$—$10^{23}$ *սմ*$^{-3}$ է, այսինքն՝ յուրաքանչյուր ատոմից ընդհանուր է դառնում մեկից ոչ ավելի էլեկտրոն: Հայտնի 107 քիմ. տարրից Մ. են 84-ը (1980): Տարրերի մետաղական և ոչ մետաղական հատկությունների տարբերությունները բացարձակ չեն՝ երբեմն կախված են արտաքին պայմաններից: Օրինակ, շատ բարձր ճնշումների տակ որոշ ոչ մետաղներ ձեռք են բերում մետաղական հատկություններ: Տարրերի պարբերական համակարգում Մ-ի և ոչ մետաղների բաժանման մոտավոր սահմանն անցնում է բորից աստատ (ալյումինից պոլոնիում) տարվող գծով (տես *Տարրերի պարբերական համակարգ*, աղյուսակը), որտեղ ոչ մետաղները դասավորված են այդ գծից վերև և աջ, իսկ Մ. ձախ:

Բնածին Մ. և երկնաքարային երկաթը հայտնի էին դեռ նախնադարյան մարդուն: Հնագույն ժողովուրդների լեզուներով երկաթի անվանումից երևում է, որ այն համարվում էր երկնային ծագում ունեցող: Մետաղ բառը ծագում է հունարեն μεταλλεύω-ից (հողից հանված): Մեզ հասած ոսկյա ամենահին իրերը պատկանում են մ.թ.ա. V հազարամյակի վերջին և IV հ. սկզբին: Պղինձը հայտնի է նեոլիթի շրջանից: Մ. թ. ա. IV հազարամյակում պղինձը դուրս մղեց քարե գործիքները Եգիպտոսում, II հազարամյակում սկսվեց բրոնզի օգտագործումը, իսկ երկնաքարային երկաթից պատրաստված հնագույն իրերը պատկանում են մ. թ. ա. IV հազարամյակին (Եգիպտոս): Հին և միջին դարերում հայտնի էին ոսկին, արծաթը, պղինձը, անագը, երկաթը և սնդիկը: Ըստ Լ. Ատչիսոնի Մ-ի և նրանց համաձուլվածքների առաջին արտադրությունն իրականացվել է Հայաստանի և Անատոլիայի տարածքում (տես աղյուսակ 1):

Աղյուսակ 1

| Մետաղը | Առաջին արտադրությունը | |
|---|---|---|
| | տարեթիվը, մ. թ. ա. | տեղը |
| Ոսկի | 5000-ից վաղ | Հայաստան—Անատոլիա |
| Պղինձ (հանքանյութից) | 4300 | Հայաստան—Անատոլիա |
| Բրոնզ | 4300 | Հայաստան—Անատոլիա |
| Կապար | 3500 | — |
| Արծաթ (ոսկի չպարունակող) | 2500 | Փոքր Ասիա (?) |
| Անագ | 1800—1500 | Հյուսիս-Արևմտյան Պարսկաստան |

Աղյուսակը կազմված է ըստ Leslie Aitcheson, A History of Metals, vol. I, II, L., 1960, գրքի:

*Մեծամորի* պեղումներից պարզվել է, որ մետաղագործությունը Հայաստանում գոյություն է ունեցել դեռ մ. թ. ա. VII—VI հազարամյակներում: Առանձնացվել են ձուլվածքների 11 խմբեր: Տարբեր Մ-ի մկնդեղի հետ համաձուլվածքներ արտադրվել են մ. թ. 4 հզ. տարի առաջ և արտահանվել Միջագետք, Ասորեստան և այլուր: Մ-ի բնույթի մասին մեզ հասած առաջին տեղեկությունները պատկանում են հին հունական փիլիսոփաներին: Ըստ Արիստոտելի Մ. բաղկացած են չորս «սկզբնանյութից» (հող, ջուր, օդ, կրակ), ըստ ալքիմիկոսների՝ «մետաղական (սնդիկ) և այրելիության (ծծումբ) սկզբնանյութերից», ըստ ֆլոգիստոնյան տեսության (XVIII դ. սկիզբ)՝ հողից և ֆլոգիստոնից՝ «այրելիության սկզբնանյութից»: Լավուազեն իր ժամանակ հայտնի Մ. (Sb, Ag, As, Bi, Co, Cu, Sn, Fe, Mg, Ni , Mo, Hi, Au, Pt, Pв, W, Zn) դասել է պարզ նյութերի շարքը: XIX դ. վերջում և XX դ. սկզբում ձևավորվել է *մետալուրգիան*՝ որպես բնական հումքից Մ-ի ստացման և մշակման եղանակների մասին գիտություն:

Սովորական պայմաններում Մ. (սնդիկից բացի) պինդ են, մի քանիսը (Na, K,Rb ևն)՝ փափուկ՝ կտրվում են դանակով, մյուսները՝ ավելի կարծր (ամենակարծրը քրոմն է): Ամենաթեթև մետաղը լիթիումն է (d= 0,53), ամենածանրը՝ օսմիումը (d= = 22,48 *գ/սմ*$^3$): Մ-ի էլեկտրահաղորդականությունը մեծ է՝ $10^4$—$10^6$ *օհմ*$^{-1}$ *սմ*$^{-1}$, և պայմանավորված է բյուրեղում էլեկ-

տրոնային «գազի» առկայությամբ: Որոշ Մ. կ ր ի տ ի կ ա կ ա ն  ջ ե ր մ ա ս տ ի ճ ա ն ի ց ցածր սառեցնելիս դառնում են գերհաղորդիչներ: Մ-ի ջերմահաղորդականությունն իրականացվում է հիմնականում «ազատ» էլեկտրոններով (տես *Մետաղաֆիզիկա*): Մագնիսական դաշտում Մ-ում առաջանում են *Հոլի էֆեկտ*, *մագնիսադիմադրություն*: Երկաթը, կոբալտը, նիկելը և գադոլինիումը մագնիսական դաշտում ձեռք են բերում կայուն *մագնիսականություն*: (Մագնիսական դաշտի ազդեցության մասին տես նաև *Ֆեռոմագնիսականություն*, *Կյուրիի կետ*, *Դիամագնիսականություն*, *Պարամագնիսականություն* հոդվածներում): Տեսանելի լույսը անդրադառնում է Մ-ի մակերեսից, ուլտրամանուշակագույնը՝ կլանվում (տես *Ֆոտոէֆեկտ*, *Մետաղաօպտիկա*): Տաքացնելիս և ուժեղ էլեկտրական դաշտի ազդեցությունից տեղի է ունենում էլեկտրոնների էմիսիա (տես *Ֆոտոէլեկտրոնային էմիսիա*, *Թունելային էֆեկտ*): Մ-ի մեխանիկական հատկությունները պայմանավորված են ոչ միայն նրանց ատոմի և բյուրեղական ցանցի կառուցվածքով, այլև բազմաբյուրեղում բյուրեղիկների ձևով, չափերով, քանակով և դասավորությամբ: Մ-ի միաբյուրեղները սովորաբար անիզոտրոպ են: Մեխանիկական հատկությունների ելային բնութագիրը Մ-ի առաձգականության մոդուլն է: Իրական բյուրեղներում հատկությունները կախված են նաև *բյուրեղների արատներից*:

Աղյուսակ 2. Մետաղների նորմալ պոտենցիալները

| Համակարգը | Տարրի տեսակը | Նորմալ պոտենցիալը 25°C-ում, *վ* | Համակարգը | Տարրի տեսակը | Նորմալ պոտենցիալը 25°C-ում, *վ* |
|---|---|---|---|---|---|
| $Li \rightleftarrows Li^{+}+e$ | s | —3,0245 | $Fe \rightleftarrows Fe^{2+}+2e$ | d | —0,44 |
| $Cs \rightleftarrows Cs^{+}+e$ | s | —3,020 | $Cd \rightleftarrows Cd^{2+}+2e$ | d | —0,402 |
| $Rb \rightleftarrows Rb^{+}+e$ | s | —2,990 | $In \rightleftarrows In^{3+}+3e$ | p | —0,34 |
| $K \rightleftarrows K^{+}+e$ | s | —2,925 | $Tl \rightleftarrows Tl^{+}+e$ | p | —0,338 |
| $Ra \rightleftarrows Ra^{2+}+2e$ | s | —2,92 | $Re \rightleftarrows Re^{3+}+3e$ | d | —0,3 |
| $Ba \rightleftarrows Ba^{2+}+2e$ | s | —2,90 | $Co \rightleftarrows Co^{2+}+2e$ | d | —0,277 |
| $Sr \rightleftarrows Sr^{2+}+2e$ | s | —2,89 | $Ni \rightleftarrows Ni^{2+}+2e$ | d | —0,25 |
| $Ca \rightleftarrows Ca^{2+}+2e$ | s | —2,87 | $Te \rightleftarrows Te^{2+}+2e$ | p | —0,24 |
| $Na \rightleftarrows Na^{+}+e$ | s | —2,714 | $Mo \rightleftarrows Mo^{3+}+3e$ | d | —0,20 |
| $Ac \rightleftarrows Ac^{3+}+3e$ | d | —2,60 | $Sn \rightleftarrows Sn^{2+}+2e$ | p | —0,140 |
| $La \rightleftarrows La^{3+}+3e$ | d | —2,52 | $Pb \rightleftarrows Pb^{2+}+2e$ | p | —0,126 |
| $Ce \rightleftarrows Ce^{3+}+3e$ | f | —2,48 | $H_2 \rightleftarrows 2H^{+}+2e$ | s | 0,000 |
| $Mg \rightleftarrows Mg^{2+}+2e$ | s | —2,375 | $Fe \rightleftarrows Fe^{3+}+3e$ | d | +0,036 |
| $Y \rightleftarrows Y^{3+}+3e$ | d | —2,37 | $W \rightleftarrows W^{3+}+3e$ | d | +0,11 |
| $Sc \rightleftarrows Sc^{3+}+3e$ | d | —2,08 | $Sb \rightleftarrows Sb^{3+}+3e$ | p | +0,20 |
| $Pu \rightleftarrows Pu^{3+}+3e$ | f | —2,03 | $Bi \rightleftarrows Bi^{3+}+3e$ | p | +0,23 |
| $Th \rightleftarrows Th^{4+}+4e$ | f | —1,90 | $Cu \rightleftarrows Cu^{2+}+2e$ | d | +0,346 |
| $U \rightleftarrows U^{3+}+3e$ | f | —1,80 | $Co \rightleftarrows Co^{3+}+3e$ | d | +0,40 |
| $Th \rightleftarrows Th^{3+}+3e$ | f | —1,73 | $Ru \rightleftarrows Ru^{2+}+2e$ | d | +0,45 |
| $Hf \rightleftarrows Hf^{4+}+4e$ | d | —1,70 | $Mn \rightleftarrows Mn^{3+}+3e$ | d | +0,47 |
| $Be \rightleftarrows Be^{2+}+2e$ | s | —1,69 | $Cu \rightleftarrows Cu^{+}+e$ | d | +0,522 |
| $Al \rightleftarrows Al^{3+}+3e$ | p | —1,67 | $Po \rightleftarrows Po^{3+}+3e$ | p | +0,56 |
| $Ti \rightleftarrows Ti^{3+}+3e$ | d | —1,63 | $Rh \rightleftarrows Rh^{2+}+2e$ | d | +0,60 |
| $Zr \rightleftarrows Zr^{4+}+4e$ | d | —1,56 | $Po \rightleftarrows Po^{2+}+2e$ | p | +0,65 |
| $U \rightleftarrows U^{4+}+4e$ | f | —1,50 | $Rh \rightleftarrows Rh^{3+}+3e$ | d | +0,70 |
| $V \rightleftarrows V^{2+}+2e$ | d | —1,18 | $Os \rightleftarrows Os^{2+}+2e$ | d | +0,70 |
| $Mn \rightleftarrows Mn^{2+}+2e$ | d | —1,18 | $Tl \rightleftarrows Tl^{3+}+3e$ | p | +0,71 |
| $Nb \rightleftarrows Nb^{3+}+3e$ | d | —1,10 | $Ag \rightleftarrows Ag^{+}+e$ | d | +0,779 |
| $V \rightleftarrows V^{3+}+3e$ | d | —0,87 | $Pb \rightleftarrows Pb^{4+}+4e$ | p | +0,80 |
| $Cr \rightleftarrows Cr^{2+}+2e$ | d | —0,86 | $Pd \rightleftarrows Pd^{2+}+2e$ | d | +0,83 |
| $Zn \rightleftarrows Zn^{2+}+2e$ | d | —0,761 | $Ir \rightleftarrows Ir^{3+}+3e$ | d | +1,0 |
| $Cr \rightleftarrows Cr^{3+}+3e$ | d | —0,74 | $Pt \rightleftarrows Pt^{2+}+2e$ | d | +1,2 |
| $Ga \rightleftarrows Ga^{3+}+3e$ | p | —0,52 | $Au \rightleftarrows Au^{3+}+3e$ | d | +1,5 |
| $Ga \rightleftarrows Ga^{2+}+2e$ | p | —0,45 | $Au \rightleftarrows Au^{+}+e$ | d | +1,7 |

Ըստ տարրերի պարբերական համակարգում գրաված տեղի, տարբերում են գլխավոր (ա) և երկրորդական (բ) ենթախմբերի Մ.: Առաջինները s (I և II խմբի 12 տարր) և p (10 տարր) տարրեր են, երկրորդները՝ d (33 տարր) և f (14 լանթանոիդ և 14 ակտինոիդ): Վերջինները կոչվում են նաև ա ն ց ո ւ մ ա յ ի ն  տ ա ր ր ե ր: Մ., բացառությամբ s տարրերի, միացություններում ցուցաբերում են փոփոխական օքսիդացման աստիճան: Մ-ին բնորոշ քիմ. հատկություններն են՝ փոքր *էլեկտրաբացասականությունը*, միացություններ առաջացնելիս հեշտությամբ էլեկտրոն տալը, ցածր դրական օքսիդացման աստիճանը, հիմնային օքսիդներ առաջացնելը ևն: Մ-ի հիդրօքսիդները հիմքեր են: Տարրերի բաժանումը Մ-ի և ոչ Մ-ի հարաբերական է: Որոշ Մ. երկդիմի են (Al, Sn, Sb, Pb, Bi ևն)՝ կախված պայմաններից և առաջացած միացության բնույթից ցուցաբերում են մետաղական կամ ոչ մետաղական հատկություններ: Տարրի մետաղական հատկություններն այնքան ավելի լավ են արտահայտված, որքան փոքր է նրա էլեկտրաբացասականությունը: Մ. բնորոշող կարևոր մեծություն է *էլեկտրոդային պոտենցիալի* արժեքը: Մ-ի հաջորդականությունը ըստ նրանց նորմալ պոտենցիալների արժեքի կոչվում է *լարման շարք* (տես աղյուսակ 2), որտեղ ջրածնին նախորդող Մ. կարող են նրան դուրս մղել թթուներից (ինդիումին նախորդողները՝ նաև ջրից): Ջրածնին հաջորդող Մ. լուծվում են միայն օքսիդիչ թթուներում, իսկ Au, Pt, Ir (փոշին)՝ արքայաջրում: Mg-ին նախորդող Մ. թթվածնի հետ միանում են հեշտությամբ, մյուսները՝ տաքացնելիս (տես *Օքսիդներ*): Au, Pt, Ir թթվածնի հետ անմիջականորեն չեն միանում: Mg-ին նախորդող Մ. ջրածնի հետ առաջացնում են աղակերպ միացություններ՝ հիդրիդներ: Անցումային Մ. ջրածնի հետ միանում են մետաղական կապով և առաջացնում փոփոխական բաղադրության հիդրիդներ: Որոշ Մ. (Pd, Pt, Ir) կլանում են ջրածինը՝ առաջացնելով պինդ լուծույթներ: Մ. միանում են *հալոգենների* և *հալկոգենների* հետ՝ առաջացնելով աղեր, մյուս ոչ մետաղների հետ՝ բորիդներ, *կարբիդներ*, *նիտրիդներ*, ֆոսֆիդներ ևն:

Մ. լայնորեն կիրառվում են ժամանակակից տ ե խ ն ի կ ա յ ո ւ մ, որտեղ Մ. են անվանում նաև Մ-ի *համաձուլվածքները*: Տեխնիկայում Մ. դասակարգում են ըստ ֆիզիկական հատկությունների և կիրառման բնագավառի. տարբերում են սև (երկաթը և նրա համաձուլվածքները), գ ո ւ ն ա վ ո ր, ծ ա ն ր (d>5, Cu, Pb ևն) և թ ե թ և (d≤5 *գ/սմ*³, Al, Mg ևն), դ ը ժ վ ա ր ա հ ա լ (W, Mo), ա զ ն ի վ (Au, Pt ևն) և այլ Մ.: Երկրակեղևում գտնվող համարյա բոլոր Մ., մեծ մասամբ համաձուլվածքների ձևով, օգտագործվում են տեխնիկայում: Կիրառվող համաձուլվածքների թիվն անցնում է 10 հզ-ից: Երկրակեղևում ամենատարածված Մ. են՝ Al (8,84%), Fe (4,65%), Mg (2,1%), Ti (0,63%): Բազմաթիվ կարևոր Մ-ի պարունակությունը երկրակեղևում հարյուրերորդական (Cu, Cr, Mn ևն) կամ հազարերորդական (Zn, Sn, Pb, Ni ևն) տոկոս է, մյուսներինը՝ ավելի քիչ, օրինակ, ուրանինը՝ 0,0003%, վոլֆրամինը՝ 0,0001%: Մ. երկրակեղևում գտնվում են հիմնականում միացությունների (օքսիդներ, սուլֆիդներ, սուլֆատներ, սիլիկատներ ևն) ձևով: Հանդիպող բնածին Մ-ից արտադրական նշանակություն ունեն միայն մի քանիսը՝ Au, Pt, Ag: Մ. ստանում են բնական միացությունները բարձր ջերմաստիճաններում (պիրոմետալուրգիա) կամ ջրային լուծույթներում (հիդրոմետալուրգիա) վերականգնելով: Չափազանց ակտիվ Մ. ստանում են էլեկտրոլիզով: Առանձին Մ-ի ստացման և հատկությունների մասին տես համապատասխան հոդվածում:

*Գրկ.* Ф р е н к е л ь  Я. И., Введение в теорию металлов, 2 изд., М.—Л., 1950; Ф р и д м а н  Я. Б., Механические свойства металлов, 2 изд., М., 1952; Н е к р а с о в  Б. В., Основы общей химии, 2 изд., т. 1—3, М., 1969—70; К о т т о н  Ф., У и л к и н с о н  Д ж., Современная неорганическая химия, т. 1—3, пер. с англ., М., 1969; Д е й  М. К., С е л б и н  Д ж., Теоретическая неорганическая химия, пер. с англ., 2 изд., М., 1971; Ш у л ь ц е  Г., Металлофизика, пер. с нем., М., 1971; Л и ф ш и ц  И. М., А з б е л ь  М. Я., К о г а н о в  М. И., Электронная теория металлов, М., 1971.

*Հ. Այվազյան, Լ. Գրիգորյան*

**ՄԵՏԱՂՆԵՐԻ ԿՏՐՈՒՄ**, տես *Մետաղամշակում կտրումով*:

**ՄԵՏԱՂՆԵՐԻ ՊԱՍՍԻՎԱՑՈՒՄ**, կոռոզիակայունությունը բարձրացնելու նպատակով մետաղների մակերևույթային շերտի անցումը քիմիապես ակտիվ վիճակից պասսիվ վիճակի: Մետաղական շինվածք-

ները մշակում են օքսիդիչների լուծույթներով՝ մակերևույթին բարակ օքսիդային թաղանթ ստանալու համար (տես *Օքսիդապատում*):

**ՄԵՏԱՂՆԵՐԻ ՔԻՄԻԱԿԱՆ-ՋԵՐՄԱՅԻՆ ՄՇԱԿՈՒՄ**, քիմիապես ակտիվ միջավայրում մետաղների ջերմային մշակում, որի հետևանքով փոխվում են մակերևութային շերտի քիմիական բաղադրությունը, կառուցվածքը և ֆիզիկաքիմիական հատկությունները: Կատարվում է զանազան տարրերով մակերևույթի դիֆուզիոն հագեցման եղանակով (բարձր ջերմաստիճաններում): Տարրի ընտրությունը պայմանավորված է դետալի մակերևույթի պահանջվող հատկություններով: Հագեցումը կատարվում է ածխածնով (*ցեմենտացում*), ազոտով (*ազոտում*), ազոտով և ածխածնով (*ցիանացում*), մետաղներով (մետաղացում), բորով (*բորապատում*), սիլիցիումով (*սիլիկապատում*) են: Կախված դիֆուզվող տարր պարունակող միջավայրի ագրեգատային վիճակից՝ տարբերում են Մ. ք-ջ. մ. գազային, հեղուկ կամ պինդ միջավայրերում: Մ. ք-ջ. մ-ման դեպքում առաջացող դիֆուզիոն շերտը, փոփոխելով մակերևույթի կառուցվածքաէներգետիկական վիճակը, դրականորեն է ազդում ոչ միայն դետալի մակերևույթի ֆիզիկաքիմիական հատկությունների, այլև ծավալային հատկությունների վրա: Այսպիսի մշակման շնորհիվ շինվածքները ձեռք են բերում բարձր մաշակայունություն, կրակակայունություն, կոռոզիակայունություն և հոգնածության կայունություն:

*Թ. Ղազանչյան*

**ՄԵՏԱՂՕՐԳԱՆԱԿԱՆ ՄԻԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, ածխածնի ատոմին անմիջականորեն միացած մետաղի ատոմ պարունակող օրգանական միացություններ: Մ. մ-ի հատկությունները պայմանավորված են մոլեկուլում մետաղ-ածխածին (Մ—C) (Մ-ն մետաղի ատոմն է) կապի բնույթով, որն իր հերթին կախված է հիմնական մետաղի և նրան միացած օրգ. ռադիկալների բնույթից ու քանակից: Կախված Մ—C կապի բնույթից՝ Մ. մ. բաժանում են երկու խմբի՝ 1. Մ. մ., որոնցում Մ—C կապը պարզ (σ) է, և 2. Մ. մ., որոնցում Մ—C կապն իրականացվում է չհագեցած օրգ. միացության π-էլեկտրոններով և մետաղի ատոմի s, p և d էլեկտրոնների փոխազդեցությամբ: Առաջին խմբի Մ. մ. են առաջացնում ոչ անցումային՝ s և p (Li, Na, K, Be, Mg, Cd, B, Al, Tl, Ge, Sn, Pb, As, Sb), և որոշ անցումային՝ d (Zn, Hg), մետաղները: Ալկալիական, հողալկալիական մետաղների (Ca, Mg), նաև Zn, Cd, Al-ի առաջացրած Մ. մ-ում Մ—C կապը խիստ բևեռացված է, մետաղի ատոմն ունի մասնակի դրական, իսկ ածխածինը՝ մասնակի բացասական լիցք՝ $Մ^{\delta+}—C^{\delta-}$: Այդ Մ. մ. շատ ռեակցունակ են՝ քայքայվում են ջրի ազդեցությամբ, զգայուն են թթվածնի և այլ նյութերի նկատմամբ: Օրինակ, $(CH_3)_2Zn$, $(C_2H_5)_3Al$ և այլն: Մ. մ. օդում ինքնաբոցավառվում են: Դրանց օգտագործվող լուծույթները (ածխաջրածիններում, եթերում և այլ լուծիչներում) սովորաբար անհրաժեշտ է պաշտպանել խոնավության, թթվածնի և ածխաթթու գազի ազդեցությունից: Ավելի կայուն են խառը Մ. մ., որոնցում մետաղի ատոմը օրգ. ռադիկալից բացի միացած է նաև թթվային մնացորդների հետ, օրինակ, $(C_2H_5)_2AlCl$, $C_2H_5AlCl_2$ են: Որքան մետաղի էլեկտրաբացասականությունը մեծ է, այնքան Մ—C կապը քիչ է բևեռացված, և միացությունն ավելի կայուն է: Օրինակ, Hg, Sn, Sb են պարունակող Մ. մ. թորվող (առանց քայքայվելու) հեղուկ կամ բյուրեղային նյութեր են, որոնք կայուն են թթվածնի և ջրի ներգործության նկատմամբ: Այդ միացությունները տաքացնելիս քայքայվում են՝ առաջացնելով մետաղ և ազատ օրգ. ռադիկալներ՝ $(C_2H_5)_4Pb \rightarrow 4C_2H_5 + Pb$: Հատկապես կայուն են արծաթի, պղնձի և ոսկու ացետիլենիդները և պլատինի մեթիլային միացությունները: Առաջին խմբի Մ. մ. ստացվում են մետաղների, նրանց հիդրիդների, հալոգենիդների և հալոգենալկիլների կամ ացիլների, չհագեցած միացությունների, դիազո և այլ օրգ. միացությունների փոխազդեցությամբ: Երկրորդ խմբի Մ. մ-ում (ֆեռոցեն, երկբենզոլքրոմ, բուտադիեներկաթեռկարբոնիլ են) մետաղի ատոմը փոխազդում է միաժամանակ π-էլեկտրոնային համակարգի բոլոր ածխածնի ատոմների հետ: Այս տիպի միացությունների համար *արժեքականության* դասական տեսությունը կիրառելի չէ, որի հետևանքով դրանց ստացումը և ուսումնասիրումը կարևոր դեր խաղացին քիմ. կապի ժամանակակից պատկերացումների ստեղծման գործում: Մ. մ. օգտագործվում են օրգ. սինթեզում (տես *Մագնեզիումօրգանական միացություններ*), ինչպես նաև չափազանց մաքուր մետաղներ ստանալու և իրերը մետաղապատելու համար: Բազմաթիվ Մ. մ. օգտագործվում են որպես հականեխիչ միջոցներ, դեղանյութեր, կենսաբանական ակտիվ նյութեր, անտիդետոնատորներ (օրինակ, քառաէթիլկապարը), հակաօքսիդիչներ, պոլիմերների կայունացնողներ են: Մ. մ., որպես միջանկյալ նյութեր, առաջանում են մի շարք կարևոր արտադրական պրոցեսներում (օրինակ, ացետիլենի հիդրատացման, ցիկլոպոլիմերման ընթացքում): Տես նաև *Գրինյարի ռեակցիա*, *Կուչերովի ռեակցիա*, *Վյուրցի ռեակցիա*:

**ՄԵՏԱՄԱԹԵՄԱՏԻԿԱ** (<*մետա*... և *մաթեմատիկա*), ձևայնացված մաթեմատիկական տեսությունները ուսումնասիրող գիտություն: *Մաթեմատիկական տրամաբանության* մի մասն է և պարունակում է կոնկրետ մաթ. ձևայնացված տեսությունների *մետատեսություններ*, հետազոտում է այդ տեսությունների ընդհանուր հատկությունները՝ հիմնական ուշադրությունը դարձնելով նրանց ներքին անհակասականության հարցերին: Նեղ իմաստով Մ. օգտվում է միայն *կոնստրուկտիվ մաթեմատիկայի* եղանակներից (կամ ավելի նեղ «ֆինիտ» եղանակներից), լայն իմաստով՝ Մ-ի եղանակները չեն սահմանափակվում: Ձևայնացված տեսությունների տրամաբանական արտածումները հաճախ Մ-ում պատկերացվում են բնական թվերի օգնությամբ՝ տվյալ տեսության ամեն մի բանաձև և տրամաբանական արտածում նկարագրվում է բնական թվով (նրա գյոդելյան համարակալումով), որից ելնելով կարելի է միարժեք կերպով վերականգնել համապատասխան բանաձևը կամ արտածումը: Նշված եղանակը (գյոդելյան համարակալումը) հնարավորություն է տալիս կամայական ձևայնացված մաթ. տեսության տրամաբանական ապարատը նկարագրել ձևայնացված թվաբանության մեջ: Այդ փաստը օգտագործելով ապացուցվում են Կ. *Գյոդելի* թեորեմները: Սակայն որոշ ձևայնացված համակարգերի (օրինակ, թվաբանության և մաթ. անալիզի) անհակասականությունը ապացուցվել է ընդհանրացված կոնստրուկտիվ եղանակներով: Որոշ հարցեր, որոնք չէր հաջողվում լուծել բովանդակային մաթ. եղանակներով (օրինակ, *կոնտինուումի* վարկածի ճշմարտության հարցը), լուծվել են Մ-ում:

*Գրկ.* Клини С. К., Введение в метаматематику, пер. с англ., М., 1957; Расева Е., Сикорский Р., Математика метаматематики, М., 1972.

*Ի. Զասլավսկի*

**ՄԵՏԱՄԵՐԻԱ** (*մետա*... և հուն. μέρος—մաս), մարմնահատվածավորություն, սեգմենտացիա, բազմաթիվ երկկողմանի սիմետրիկ կենդանիների մարմնի մասնատվածությունը երկայնական առանցքով դասավորված մասերի՝ մետամերների: Մ. կարող է լինել միայն արտաքին (պսևդոմետամերիա) կամ տարածվել նաև ներքին օրգանների վրա (իսկական Մ.): Իսկական Մ. լինում է լրիվ, երբ ընդգրկում է ամբողջ օրգանիզմը, և ոչ լրիվ, երբ տարածվում է միայն օրգանների որոշ համակարգերի (մկանային, կմախքային են) վրա: Տարբերում են հոմոնոմ Մ., որի դեպքում մարմնի բոլոր մետամերները նման են կառուցվածքով և կատարում են նույնատիպ ֆունկցիաներ, և հետերոնոմ Մ., երբ մետամերները տարբեր ուղղություններով տարբերակվում են և արտաքինից նման չեն միմյանց: Բարձրակարգ կենդանիների և մարդու մոտ Մ. պարզորոշ արտահայտվում է սաղմնային զարգացման վաղ փուլերում և որոշ գծերով պահպանվում ողնաշարի կմախքում, կողոսկրերի, միջկողոսկրային նյարդերի ու մկանների ճիշտ հերթականության մեջ:

**ՄԵՏԱՄՈՐՖԱՅԻՆ ԱՊԱՐՆԵՐ**, ապարներ, որոնք *մետամորֆիզմի* ներգործության հետևանքով ենթարկվել են քիչ թե շատ փոփոխման: Փոփոխվում է ինչպես ապարների սկզբնական ստրուկտուրան, այնպես էլ միներալոգիական կազմը: Երբեմն այդ փոփոխությունը այնքան մեծ է, որ սկզբնական ապարի միներալոգիական կազմից ոչինչ չի մնում, և ստացվում է որակապես նոր ապար (հողմահարման շնորհիվ գոյացած ապարները Մ. ա-ի խմբին չեն պատկանում): Մ. ա. լինում են՝ կոնտակտային (առաջանում են ներդրվող մագմատիկ զանգվածի՝ շրջապատի ապարների հետ շփման վայրում և հիմնականում հետևանք են բարձր ջերմաստիճանի ազդեցության) և ավտոմետամորֆիկ (կազմավորվում են բուն մագմայից անջատվող լուծույթների գործունեության շնորհիվ, օրինակ, *գրեյզենների* ձևավորումը): Հրաբխածին շեր-

տերին բնորոշ են կ ա ն ա չ ք ա ր ա յ ի ն փոփոխությունները, ինչպես նաև «երկրորդական քվարցիտների» առաջացումը: Մ. ա. են տարբեր կարգի բյուրեղային թերթաքարերը, եղջրաքարերը, սկառները, գնեյսները, մարմարները, երկրորդական քվարցիտները: Հայկական ՍՍՀ տարածքում հայտնի են Փամբակում, Զանգեզուրում, Հախում գետի ավազանում և այլուր:

**ՄԵՏԱՄՈՐՖԱՅԻՆ ՀԱՆՔԱՎԱՅՐԵՐ**, հանքավայրեր, որոնք առաջանում են գոյություն ունեցածների հաշվին, բուն *մետամորֆիզմի*, այսինքն՝ ձևափոխումների պրոցեսում: Քարածխի շերտերն, ընկնելով մեծ ճնշման ու բարձր ջերմության միջավայր, վերածվում են բոլորովին այլ, որակապես նոր հատկություններով օժտված օգտակար հանածոյի՝ գրաֆիտի: Նույն եղանակով են ձևավորվում հղկանյութերի, հրակայուն նյութերի, թերթաքարերի, մարմարների, քվարցիտների և այլ ոչ մետաղային օգտակար հանածոների հանքավայրեր: Մետամորֆային ծագման մետաղային օգտակար հանածոների արդ. հանքավայրեր գրեթե չկան:

**ՄԵՏԱՄՈՐՖԻԶՄ** (< հուն. μεταμορφόομαι — փոխակերպվել, վերափոխվել), ապարների տեքստուրայի, ստրուկտուրայի, միներալային ու քիմիական կազմի էական փոփոխություններ *երկրակեղևում* և *Երկրի մանթիայում*՝ ջերմության, ճնշման և խորքային ֆլյուիդների (ցնդող բաղադրիչների) ներգործության շնորհիվ: Տերմինն առաջարկել է անգլիացի երկրաբան Չ. *Լայելը*, 1883-ին: Մ-ին չեն պատկանում նստվածքների խտացման, ցեմենտացման, *դիագենեզի* պրոցեսները և *հողմահարումը*: Մ-ի գլխավոր գործոններն են ջերմությունը, ճնշումը (հիդրոստատիկ և միակողմանի), ֆլյուիդների կամ լուծույթների բաղադրությունը և քիմ. ակտիվությունը: Կարևոր նշանակություն ունեն նաև սկզբնական ապարների կազմը, կառուցվածքը և Մ-ի երկրաբանական պայմանները (տարածական և ծագումնային փոխադարձ կապերը տեկտոնական շարժումների, մագմատիզմի հետ): Ըստ այդ գործոնների (հիմնականում ջերմություն և ճնշում) կատարվում է մետամորֆային ապարների գլխավոր միներալների կայունության մարզերի (Մ-ի ֆացիաներ) առանձնացում, որն ընկած է բոլոր մետամորֆային ապարների ստորաբաժանման և Մ-ի աստիճանի ուսումնասիրության հիմքում: Մետամորֆային փոփոխությունները հանգում են սկզբնական միներալների տրոհման, մոլեկուլների վերախմբավորման և միներալային տեսակների նոր, ավելի կայուն ասոցիացիաների առաջացման, այսինքն՝ տեղի է ունենում ապարների մասնակի կամ լրիվ վերաբյուրեղացում, որը զուգակցվում է նոր ստրուկտուրաների, իսկ մեծ մասամբ՝ նոր միներալների կազմավորմամբ: Մետամորֆային պրոցեսները խիստ բազմազան են ըստ դրսևորման ձևի և ապարների վերափոխման բնույթի: Մ. կարող է ընդգրկել ապարների հսկայական զանգվածներ (ռեգիոնալ Մ.) կամ արտահայտվել տեղայնացված, հարելով մագմատիկ ապարների կոնտակտին (կոնտակտային Մ.) կամ բեկվածքներին (մերձբեկվածքային Մ.): Խորքային զոնաներում Մ. հաճախ համընկնում է գրանիտոիդային մագմատիզմի ռեգիոնալ զարգացման մարզերի հետ: Ջերմության բարձրացման դեպքում կատարվող Մ. կոչվում է պրոգրեսիվ և ուղեկցվում է սկզբնական ապարների ցնդող բաղադրիչների կորստով (ապահիդրատացում, ապակարբոնատացում): Ջերմության նվազման ֆոնի վրա ընթացող հետադարձ պրոցեսները վերագրվում են ռեգրեսիվ Մ-ին: Կրկնվող ռեգրեսիվ Մ. ստացել է դ ի ա ֆ տ ո ր ե զ անունը:

*Գրկ.* Е л и с е е в Н. А., Метаморфизм, [2 изд.], М., 1963; Природа метаморфизма, [пер. с англ.], М., 1967; Фации метаморфизма, М., 1970.

**ՄԵՏԱՄՈՐՖՈԶ** (<հուն. μεταμόρφωσις— փոխակերպություն), կ ե ր պ ա ր ա ն ա փ ո խ ու թ յ ու ն, Մ. կ ե ն դ ա ն ի ն ե ր ի, մ ե տ ա բ ո լ ի ա, ետսաղմնային զարգացման ընթացքում օրգանիզմի կազմության խորը կերպարանափոխություն: Մ. սովորաբար կապված է անհատական զարգացման (*օնտոգենեզի*) ընթացքում կենդանու գոյության պայմանների և կենսակերպի խիստ փոփոխությունների հետ: Մ-ով զարգացող կենդանիների կենսական ցիկլում լինում է առնվազն մեկ թրթուրային փուլ, որի ընթացքում օրգանիզմը էապես տարբերվում է հասուն անհատից: Զարգացման առանձին փուլերում կենդանին կատարում է տեսակի պահպանմանը և զարգացմանը նպաստող տարբեր ֆունկցիաներ: Մ-ի տարբեր նկատվում են որոշ նախակենդանիների (օրինակ՝ ծծող ինֆուզորիաների) մոտ:



Կ ե ն դ ա ն ի ն ե ր ի մ ե տ ա մ ո ր ֆ ո զ. *I*. սցիֆոիդ մեդուզայի զարգացումը. *1*. թրթուր, *2*. պոլիպ, *3*. էֆիրների առաջացումը, *4*. երիտասարդ մեդուզա. *II*. կաղամբի սպիտակաթիթեռի զարգացումը. *1*. թրթուր, *2*. հարսնյակ, *3*. թիթեռ. *III*. գորտի զարգացումը. *1*. շերեփուկ, *2*. գորտ

Սպունգներին և աղեխորշավորներին բնորոշ է Մ., որի ընթացքում ազատ լողացող թրթուրները կատարում են տեսակի տարածման ֆունկցիա: Հաճախ նման Մ. բարդանում է սեռական և անսեռ սերունդների հաջորդականությամբ (սցիֆոմեդուզաներ, բազմաթիվ տափակ որդեր ևն):



Բ ու յ ս ե ր ի վ ե գ ե տ ա տ ի վ օ ր գ ա ն ն ե ր ի մ ե տ ա մ ո ր ֆ ո զ: Տերևների մետամորֆոզ. *1*. տերևային բեղիկներ. *ա*. սիսեռի, *բ*. տափոլոռի, *2*. միջատակեր բույսի սափորիկ, *3*. կռզու փշեր: Ընձյուղի մետամորֆոզ. *4*. կարտոֆիլի պալարներ, *5*. խաղողի բեղիկներ, *6*. ալոճենու փշեր, *7*. մկնափշի ֆիլոկլադիումներ, *8*. սոխի կոճղեգ: Արմատի մետամորֆոզ. *9*. գեորգենու արմատային պալարներ, *10*. շաքարի ճակնդեղի արմատապտուղ

Նեմերտինների Մ. նեկրոտիկ տիպի է, ապագա հասուն անհատը զարգանում է թրթուրի ներսում, իսկ թրթուրի մարմնի հիմնական զանգվածը մահանում է: Հոդվածոտանիների, ուսոտանիների, փափկամորթների, փշամորթների Մ. ընթանում է առանց սերունդների հաջորդականության: Միջատները լրիվ Մ-ի ընթացքում անցնում են ձվի, թրթուրի, հարսնյակի և հասուն անհատի փուլերով: Ողնաշարավորներից Մ-ով են զարգանում քարալեզները, որոշ ձկներ և երկկենցաղները: Մ. կարգավորվում է հորմոնների միջոցով: Տարբերում են Մ-ի նաև այլ ձևեր. կ ր ի պ տ ո մ ե տ ա բ ո լ ի ա (խաղողի խխունջ), ա ն ա մ ո ր ֆ ո զ (որոշ բազմոտանիներ և ստորին անբեղիկ միջատներ), պ ր ո տ ո մ ե տ ա բ ո լ ի ա (առաջնային անթև միջատներ), հ ե մ ի մ ե տ ա բ ո լ ի ա, է պ ի մ ո ր ֆ ո զ, հ ո լ ո մ ե տ ա բ ո լ ի ա (թևավոր միջատներ):

Մ. բ ու յ ս ե ր ի, բույսի հիմնական օրգանների ձևափոխությունը կապված ֆունկցիաների կամ գործունեության պայմանների փոփոխության հետ: Մ-ի ամենից հաճախ ենթարկվում են ընձյուղը և տերևը: Խոնավության անբավարարության հետևանքով չորային շրջանների բազմաթիվ բույսերի (օրինակ՝ կռզիների) ցողունը վերածվել է ջուր կուտակող և ֆոտոսինթեզող օրգանի, իսկ տերևածոցերում զարգացել են կարճացած ընձյուղներ (փշեր). լիանների վերգետնյա ընձյուղները և տերևները վերածվել են մա-

զուգող բեղիկների, միջատակեր բույսերի տերևները՝ միջատների ինքնատիպ թակարդների: Բազմաթիվ բազմամյա խոտաբույսերի ստորգետնյա ընձյուղները ձևափոխվել են պահեստային օրգանների՝ կոճղարմատների, պալարների, սոխուկների և պալարասոխուկների: Սերմերով բազմանալուն հարմարված բույսերի ընձյուղի ձևափոխությունն է ծաղիկը: Արմատների Մ. սովորաբար կապված է պահեստող ֆունկցիայի գերաճման (օրինակ՝ արմատապտուղների առաջացման) կամ վերգետնյա միջավայրում դրանց առանձնահատուկ գործունեության (օրինակ՝ էպիֆիտների օդային արմատները) հետ: «Մ.» տերմինը առաջարկել է Կ. *Լիննեյը* (1775): Սովորաբար Մ-ի ենթարկվում են ոչ թե հասուն օրգանները, այլ դրանց սաղմերը: Ըստ սովետական ֆիզիոլոգ Դ. Ա. Սաբինինի, օրգանի սաղմի վերջնական տեսքը կապված է որոշակի ֆիզիոլոգիապես ակտիվ նյութերի կուտակման հետ և պայմանավորված է արտաքին ու ներքին մի շարք գործոններով:

**ՄԵՏԱՊԼԱԶԻԱ** (< հուն. μεταπλάσις — վերափոխություն), հյուսվածքափոխություն, հյուսվածքի մի տարատեսակի վերափոխումը այլ տեսակի, որը նախորդից տարբերվում է մորֆոլոգիապես և ֆունկցիայով՝ պահպանելով տեսակային պատկանելությունը: Տերմինն առաջարկել է Ռ. *Վիրխովը* (1884): Մարդու և կենդանիների մոտ նկատվում է միայն էպիթելային և շարակցական հյուսվածքների Մ.՝ լորձաթաղանթների (շնչառական, մարսողական ուղիների, արգանդի) գլանաձև էպիթելի փոխակերպումը բազմաշերտ տափակ եղջերացող էպիթելի (մաշկի էպիդերմիսի նման), ինչպես նաև թելավոր շարակցական հյուսվածքինը՝ ճարպայինի, աճառայինի կամ ոսկրայինի: Տարբերում են ուղղակի Մ., որի դեպքում մի հյուսվածքը փոխակերպվում է այլ հյուսվածքի՝ դրա կառուցվածքային տարրերի փոփոխման շնորհիվ, և անուղղակի, երբ նոր հյուսվածքի զարգացումն իրականանում է չտարբերակված բջիջների բաժանմամբ և հետագա տարբերակմամբ: Մ-ի պատճառ կարող են դառնալ արտաքին միջավայրի փոփոխությունները, հյուսվածքների երկարատև բորբոքային պրոցեսները, ավիտամինոզ A-ն, արյունաստեղծ օրգանների, վարակիչ հիվանդությունները, հորմոնային տեղաշարժերը ևն: Մ. խախտում է հյուսվածքի բնականոն գործունեությունը և կարող է հանգեցնել չարորակ ուռուցքի սկզբնավորման:

**ՄԵՏԱՍՈՄԱՏԻԿ ՀԱՆՔԱՎԱՅՐԵՐ**, հանքավայրեր, որոնք առաջանում են *մետասոմատոզի* պրոցեսների հետևանքով: Մետաղային հանքավայրերի որոշ դասընթացներում *հիդրոթերմալ հանքավայրերն* ստորաբաժանվում են երկու գլխավոր ծագումնային խմբի՝ ա. դատարկությունների լցման, բ. մետասոմատիկ:

**ՄԵՏԱՍՈՄԱՏՈԶ**, մետասոմատիզմ (*մետա...* և հուն. σῶμα, սեռական հոլովը՝ σώματος — մարմին), հասկացություն, որ անցյալ դարի կեսերին մտցրել է Նոյմանը՝ տեղակալվող միներալի հետ լուծույթի քիմ. փոխներգործության պայմաններում ընթացող պսևդոմորֆիզմի տարատեսակը որակելու համար: Սովետական գիտնական Դ. Ս. Կորժինսկին (1936, 1953) Մ. սահմանում է որպես «ապարների յուրաքանչյուր տեղակալում քիմ. կազմի փոփոխությամբ», որը տեղի է ունենում ինչպես արտածին, այնպես էլ ներծին պայմաններում, «ընդ որում հին միներալների հալումը և նորերի նստեցումը կատարվում է գրեթե միաժամանակ, այնպես որ տեղակալման ընթացքում տեղակալվող ապարները ամբողջ ժամանակ պահպանում են պինդ վիճակ» («Геологический словарь», т. 1, 1973, с. 437): Ըստ նյութի տեղափոխման բնույթի Մ. լինում է՝ դիֆուզիոն, ներծծման, իոնադիֆուզիոն, կոնտակտադիֆուզիոն, կոնտակտային ևն: Մետասոմատիկ նորագոյացումների ձևավորման պայմանների ընդհանրության և կազմի հիման վրա Մ-ի արգասիքները ստորաբաժանվում են՝ *սկառնների*, *գրեյզենների*, կարբոնատիտների, ակսետալիտների, պրոպիլիտների, արգիլիզիտների և այլ ձևերի:

**ՄԵՏԱՍՏԱԲԻԼ ՎԻՃԱԿ** (*մետա...* և լատ. stabilis — կայուն), միջակայուն վիճակ, համակարգի հարաբերական կայուն վիճակ, որից այն ինքնակամ (ներքին ֆլուկտուացիաների հետևանքով) կամ արտաքին գրգռիչի ազդեցությամբ կարող է անցնել ավելի կայուն վիճակի: Ինքնակամ անցման հավանականությունը շատ ավելի փոքր է, քան անկայուն վիճակինը: 1. Թերմոդինամիկական համակարգերի Մ. վ., անկայուն հավասարակշռության վիճակ: Արտաքին, բավական ուժեղ ազդակների ներգործությամբ համակարգը Մ. վ-ից անցնում է մեկ այլ, ավելի կայուն վիճակի: Մ. վ-ում են գտնվում, օրինակ, գերտաքացված հեղուկը (հեղուկ, որի ջերմաստիճանը բարձր է եռման ջերմաստիճանից՝ տվյալ ճնշման դեպքում), գերսառեցված գոլորշին (գոլորշի, որի ջերմաստիճանը ցածր է կոնդենսացման ջերմաստիճանից՝ տվյալ ճնշման դեպքում), գերհագեցած լուծույթը (լուծույթ, որի կոնցենտրացիան գերազանցում է հագեցած լուծույթի կոնցենտրացիան՝ տվյալ ճնշման դեպքում) ևն:

2. *Քվանտային մեխանիկայի* օրենքներով նկարագրվող քվանտային համակարգերի Մ. վ., ատոմային համակարգերի (ատոմների, մոլեկուլների, միջուկների) գրգռված վիճակ, որը կարող է երկար գոյատևել, այսինքն՝ կայուն է: Մետաստաբիլ են այնպիսի գրգռված վիճակները, որոնցից քվանտային անցումը ավելի փոքր էներգիայով վիճակի ուղեկցվում է ճառագայթմամբ (ֆոտոնների առաքումով) և արգելված է ջոկման կանոններով, այսինքն՝ այդպիսի անցում կամ առհասարակ չի կարող տեղի ունենալ, կամ քիչ հավանական է:

**ՄԵՏԱՍՏԱԶ** (< հուն. μετάστασις — տեղափոխություն, անցում, տեղաշարժ), երկրորդային ախտաբանական օջախ. առաջանում է օրգանիզմի առաջնային ախտահարման օջախից ախտածին գործոնի (ուռուցքային բջիջներ, վարակ) տարածման հետևանքով: Ըստ փոխանցման ուղիների տարբերում են ավշային և արյունային Մ-ներ: Ժամանակակից հասկացությամբ Մ. անվանում են չարորակ *ուռուցքների* բջիջների տարածումը (դիսեմինացումը), իսկ վարակինը՝ մետաստատիկ վարակիչ օջախներ: Հայտնի են նաև բարորակ ուռուցքների Մ-ի դեպքեր: Ուռուցքային բջիջներն ավշային ճանապարհով տեղափոխվելիս Մ. առաջանում է առաջնային օջախին մոտ գտնվող ավշային հանգույցներում, արյունայինի դեպքում՝ թոքերում, լյարդում, ոսկրերում և այլ օրգաններում: Մ-ի առկայությունը վկայում է ուռուցքային պրոցեսի ընդհանրացումը: Մ. լինում է միայնակ, որը կարելի է հեռացնել վիրահատությամբ, և բազմակի՝ պահանջում է ճառագայթաբուժման և քիմիաբուժության մեթոդների կիրառում:

**ՄԵՏԱՍՏԱԶԻՈ** (Metastasio) Պիետրո (իսկականը՝ Տրապասի, 1698—1782), իտալացի բանաստեղծ և դրամատուրգ-լիբրետիստ: 1730-ից՝ պալատական բանաստեղծ Վիեննայում: Ստեղծել է սերիա-օպերա ժանրի լիբրետոյի դասական նմուշներ: 1712-ին հրատարակել է «Հուստինոս» առաջին ողբերգությունը, 1718-ին՝ քնարական բանաստեղծությունների առաջին ժողովածուն: Մ-ի 27 օպերային լիբրետոներից բազմիցս երաժշտականացվել են «Լքված Դիդոնան» (1724), «Սիրոե» (1726), «Էցիո» (1728), «Ճանաչված Շամիրամը» (1729), «Ալեքսանդրը Հնդկաստանում» (1729), «Արտաքսերքսես» (1730), «Դեմետրիո» (1731), «Դեմոֆոնտե» (1733), «Տիտոսի գթասրտությունը» (1734), «Ճանաչված Կյուրոսը» (1736), «Թեմիստոկլեսը» (1736, հայ. հրտ. 1886), «Անտիգոնե» (1743), «Թագավոր Հովիվը» (1751) ստեղծագործությունները:

**ՄԵՏԱՏԵՍՈՒԹՅՈՒՆ**, տեսություն, որն ուսումնասիրում է մեկ այլ, այսպես կոչված, առարկայական տեսության (օբյեկտ, տեսական համակարգ) կառուցվածքը, նրա մեթոդներն ու հատկությունները: «Մ.» հասկացությունը իմաստ ունի միայն այն դեպքում, երբ այն վերագրվում է մի կոնկրետ (առարկայական) տեսության, օրինակ, մաթեմատիկայի Մ.՝ *մետամաթեմատիկա*, տրամաբանության Մ.՝ *մետատրամաբանություն*: Սկզբունքորեն ամեն տեսություն կարող է ունենալ Մ., սակայն Մ-յան միջոցների կիրառումը արդյունավետ է այն դեպքում, երբ համապատասխան առարկայական տեսությունը կառուցված է դեդուկտիվ եղանակով և ձևայնացված է: Մ. այն բովանդակային միջոցների ամբողջությունն է, որով կառուցվում է (ձևական) առարկայական տեսությունը և բացահայտվում է նրա հատկությունները. նախ այն միջոցները, որոնցով առարկայական տեսության տարրերը ներկայացվում են որպես բովանդակությունից զուրկ կոնստրուկտիվ օբյեկտներ (հաշվի այբուբեն), տրվում են այդ տարրերից արտահայտություններ (բանաձևեր) կազմելու և նրանք միմյանցից արտածելու կանոնները (մտահանգման և ապացուցման ձևական կանոններ): Այս առումով Մ-յան հիմնական բովանդակությունը կազմում են մետաթեորեմները (օրինակ, դեդուկցիայի թեորեմը աքսիոմների ու պրեդիկատների հաշիվների մեջ): Մ-յան ոլորտին են պատկանում նաև առարկայական տեսության հնարավոր

մեկնաբանությունների, նրա *անհակասականության* ու *լրիվության* ուսումնասիրության հարցերը: Մ-յան դրույթի օրինակ են Կ. *Գյոդելի* թեորեմները: Ձևակացված Մ. իր հերթին կարող է ձևայնացվել և ծառայել որպես առարկայական տեսություն նոր Մ-յան՝ մետամետատեսության համար:

Մ-յան գաղափարը ներմուծել է Դ. Հիլբերտը դասական մաթեմատիկայի հիմնավորման իր ֆորմալիստական ծրագրի իրականացման նպատակով: Այս բնագավառում մեծ ներդրում ունեն Ա. Տարսկին, Ռ. Կառնապը, Հ. Կյոռին:

*Գրկ.* Ավետիսյան Ս. Հ., Մաթեմատիկական տրամաբանության հիմնական տարրերը, Ե., 1969: Клини С. К., Введение в метаматематику, пер. с англ., М., 1957, гл. III—VIII, XIV, XV; Чёрч А., Введение в математическую логику, пер. с англ., т. 1, М., 1960 (введение); Его же, Математическая логика, пер. с англ., М., 1973. *Ս. Ավետիսյան*

**ՄԵՏԱՏՐԱՄԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, ժամանակակից տրամաբանության բնագավառ, որն ուսումնասիրում է տրամաբանական տեսությունների կառուցվածքն ու հատկությունները: Մ. ըստ էության բովանդակային *մետատեսություն* է, որի ուսումնասիրման առարկան կազմում են ձևական տրամաբանական հաշիվները՝ որպես առարկայական (օբյեկտ) տեսություններ: Մ-յան դասական դրույթ է, օրինակ, Ա. *Չյորչի* թեորեմն այն մասին, որ լուծելիության պրոբլեմը պրեդիկատների նեղ հաշվում անլուծելի է: Մ-յան մեջ առանձնացվում է ձևաբանությունը, որտեղ քննարկվում են տրամաբանական հաշիվների կառուցման օրենքները, և իմաստաբանությունը, որը վերաբերում է այդ հաշիվների մեկնաբանության պրոբլեմներին: Մ-յան շրջանակներում ծագում են նաև պրոբլեմներ, կապված սովորական բովանդակային կշռադատությունների *իմաստային նշանակության* և նրանց հոգեբանական ասպեկտների վերլուծության հետ (պրագմատիկա): *Ս. Ավետիսյան*

**ՄԵՏԱՔՍ**, բնական տեքստիլ թել՝ *բոժոժի* հյուսման ժամանակ *շերամորդի* մետաքսազեղձերից անջատվող նյութ: Առավել կարևոր արդ. նշանակություն ունի մետաքսագործական տնտեսություններում բազմացվող թթենու շերամորդի Մ. (տես *Մետաքսագործություն*): Շերամորդի բոժոժից (տես *Շերամապահություն*) ստացվում է մետաքսահումքը: Այն ենթարկվում է ոլորման (տես *Մետաքսաոլորում*), իսկ Մ-ի թափոնները վերամշակվում են մանված Մ-ի՝ մետաքսաթելի (տես *Մետաքսամանում*): Մետաքսե գործվածքները, ոլորված Մ-ի որոշ տեսակները, ինչպես նաև թափոնները (մինչև մանումը) սոսնձազերծվում են, որից հետո դառնում փափուկ, փայլուն և հեշտ ներկվող: Մ. ունի բարձր մեխանիկական հատկություններ. խզման լարումը 40 *կԳ/մմ*$^2$ կարգի է, խզման երկարացումը՝ 14—18%: Սովորական օրգ. լուծիչներում չի լուծվում, լույսի հանդեպ կայունությունը մեծ չէ: Ոլորված Մ. օգտագործում են գործվածքների, տրիկոտաժի պատրաստման և տեխ. նպատակների համար, իսկ մանված Մ. հիմնականում գործվածքների պատրաստման համար:

**ՄԵՏԱՔՍ ԱՐՀԵՍՏԱԿԱՆ**, տես *Մանրաթելեր*:

**ՄԵՏԱՔՍԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ**, *մանածագործության* (ոստայնանկության) ճյուղ, մետաքսյա թելեր ստանալու և դրանցից գործվածքներ պատրաստելու արհեստը: Չինաստանում, որը համարվում է Մ-յան հայրենիքը, *մետաքսե* գործվածքներ պատրաստել են դեռևս մ. թ. ա. III հազարամյակում: Միջին Ասիայում, Իրանում, Կովկասում և Բյուզանդիայում Մ. հայտնի դարձավ V—VII դդ., հետագայում տարածվեց նաև այլ երկրներում ու մայր ցամաքներում: X դ. արդեն Թաբարստանը, Ջուրջանը և Անդրկովկասի երկրները դարձել էին Մ-յան խոշոր կենտրոններ: Սկսած հին ժամանակներից մետաքսե գործվածքները միջազգային առևտրի ամենահարգված առարկաներից էին: «*Մետաքսի ճանապարհը*», որով կատարվում էր մետաքսեղենի առևտուրը Արևելքի և Արևմուտքի միջև, ձևավորվել էր դեռևս մ. թ. ա. II դ. և գործում էր մինչև XVI դ.:

Մ. նշանակալից զարգացման էր հասել միջնադարյան Հայաստանում: IX—XIII դդ. հայ և արաբ հեղինակները հիշատակում են Հայաստանում, մասնավորապես Դվինում արտադրվող մետաքսե գործվածքները: Մեզ հասել են նաև այդ ժամանակաշրջանի մետաքսե գործվածքների նմուշներ (Անիի պեղումներից): «Կերպասագործ» տերմինը մետաքսագործ իմաստով գործածել է Անանիա Շիրակացին (VII դ.), իսկ XI դ. հեղինակ Գրիգոր Մագիստրոսը Մ. համարում է առանձին արհեստ և արհեստավորին անվանում «մետաքսագործ կերպասի կամ կերպասոց»: Հանդիպում են նաև արբեշում, ապրեշումագործ բարբառային ձևերը: Հայաստանում պատրաստված մետաքսաթելը և մետաքսե գործվածքները (կերպասներ, թավիշներ, նուրբ գործվածքներ, դրանց թվում և շղարշներ) ունեին գեղեցիկ փայլ, նուրբ էին, փափուկ, դիմացկուն և լավ ներկվում էին: Հայտնի էին հատկապես որդան կարմրով ներկված հայկ. մետաքսաթելի ծիրանին (բյուզանդացիներն անվանում էին «պորփյուրիկոն») և դիպակները: Մեր օրերում, երբ բացի բնական մետաքսից արտադրվում է նաև մեծ քանակությամբ արհեստական մետաքս, Մ. դարձել է մանածագործական արդյունաբերության կարևոր ճյուղերից մեկը (տես *Մետաքսյա գործվածքների արդյունաբերություն*):

*Գրկ.* Առաքելյան Բ. Ն., Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դդ., հ. 1, Ե., 1958: *Բ. Առաքելյան*

**ՄԵՏԱՔՍԱՄԱՆՈՒՄ**, մետաքսագործության և մետաքսի արդյունաբերության թելքավոր թափոններից մետաքսամանվածքի պատրաստման տեխնոլոգիական պրոցեսների համախումբ: Մ-ման ժամանակ օգտագործում են մանման 3 համակարգ. սանրային՝ առանց սանդերքազզման, սանրային՝ սանդերքազզումով, և ապարատային: Մ. բաղկացած է հետևյալ գործողություններից. հումքի տեսակավորում, նախապատրաստում և սոսնձազերծում (տես *Մետաքս*), մանվածքի փխրեցում և կտրատում, զզում, նախամանում և մանում, ոլորում և վերջնամշակում:

**ՄԵՏԱՔՍԱՈԼՈՐՈՒՄ**, մետաքսահումքից ոլորված *մետաքսի* պատրաստման տեխնոլոգիական պրոցեսների համախումբ: Ըստ կառուցվածքի տարբերում են պարզ, բարդ և ձևավոր ոլորքի մետաքս: Մ-ման ժամանակ մետաքսահումքի կծիկները թրջում են օճառաճարպային էմուլսիայի մեջ, որից հետո քամում են, հարթում և չորացնում: Այնուհետև կծիկները քանդում են փաթաթիչ մեքենաների օգնությամբ և հեռացնում թելերի արատավոր մասերը: Ավելի հաստ թել ստանալու համար կատարում են մի քանի թելերի միահյուսում, որն ապահովում է թելի ամրությունը հետագա ոլորման ժամանակ: Վերջինս կատարվում է հարկային կամ օղակավոր ոլորիչ մեքենաներով: Ետոլորումից խուսափելու համար թելերը մշակում են գոլորշիով: Ոլորված մետաքսը սովորաբար ստանում են տարբեր ոլորքի (50-ից 3000 ոլորք 1 *մ*-ի վրա) մի քանի (2—5) թելերից:

**ՄԵՏԱՔՍԱՍՏՊՈՒԹՅՈՒՆ**, տես *Տրաֆարետային տպագրություն*:

**ՄԵՏԱՔՍԵ** [Պողոսյան Մետաքսե Սերոբի, ծն. 23.12.1928, գ. Եզանլար (այժմ՝ Արևշատ, ՀՍՍՀ Արթիկի շրջանում)], հայ սովետական բանաստեղծուհի: ՍՄԿԿ անդամ 1948-ից: Ավարտել է Երևանի Խ. Աբովյանի անվ. մանկավարժական (1952) և Մոսկվայի Մ. Գորկու անվ. գրականության (1958) ինստ-ները: Առաջին ժողովածուն լույս է տեսել 1957-ին՝ «Ջահելություն» խորագրով: Այնուհետև հրատարակել է «Կնոջ սիրտ» (1960), «Ուրիշի արցունքները» (1963), «Նվիրում» (1968), «Զգույշ, սիրտ է» (1974), «Սերը հավատ է» (1977) ժողովածուները: Գրել է նաև մանուկների համար («Լիլիթը և բադիկները», 1977, պատմվածքներ): Թարգմանել է Բ. Ախմադուլինայի «Բանաստեղծությունները» (1964) և սլովակ բանաստեղծ Մ. Վալեկի «Հեռավոր հանդիպում» (1979) ժողովածուները: Մ-ի բանաստեղծությունները թարգմանվել են ՍՍՀՄ և այլ ժողովուրդների լեզուներով:

**ՄԵՏԱՔՍԵ ԳՈՐԾՎԱԾՔ**, բնական *մետաքսից* կամ քիմիական մանրաթելերից պատրաստված մանածագործվածք: Տարբերում են *տեխնիկական գործվածք*, զգեստներ, վերնաշապիկներ, կոստյումներ, վերարկուներ, փողկապներ կարելու, ինչպես նաև կանացի արդուզարդի և գալանտերեային ապրանքների համար նախատեսված Մ. գ-ներ: Պատրաստում են նաև հատային արտադրանք՝ թաշկինակներ, սփռոցներ, ծածկոցներ ևն: Մ. գ-ների զգալի մասն են կազմում կրեպե (կրեպդեշին, կրեպ-ժորժետ, կրեպ-սատին) և խավոտ (թավիշ, նրբաթավիշ, թավշամահուդ) գործվածքները: Ացետատային թելի հետ ոլորված վիսկոզային կրեպե թելերից պատրաստում են Մ. գ-ներ կոստյումների, զգեստների համար, իսկ կապրոնե մետաքսից, պերլոնից, նայլոնից՝ նրբագույն Մ. գ.՝ սպիտակեղենի և կանացի բլուզների համար: Թողարկվում են միա-

գույն, երփներանգ, դաջովի են Մ. գ-ներ: Տես նաև *Մետաքսագործություն*:

**«ՄԵՏԱՔՍԻ ՃԱՆԱՊԱՐՀ»**, Չինաստանը Առաջավոր Ասիայի և ապա՝ Եվրոպայի հետ կապող առևտրակարավանային մայրուղու անվանումը: Գործում էր սկսած մ. թ. ա. II դ. մինչև մ. թ. XVI դ.: «Մ. ճ.»-ով փոխադրվող հիմնական ապրանքը չինական մետաքսն էր: «Մ. ճ.» սկիզբ էր առնում կենտրոնական Չինաստանից և Լանչժոուով անցնելով Դունխան՝ երկատվում էր. հվ. երթուղին անցնում էր Խոթան, Յարքենդ, Բալխ և Մերվ քաղաքներով, հս.՝ Տուրֆան, Կաշգար, Սամարղանդ, Մերվ, ուր միանալով հվ-ին՝ ձգվում էր Հեկատոմպիլ, Էկբատան, Բաղդադ քաղաքներով դեպի Միջերկրական ծովի Տյուրոս, Անտիոք նավահանգիստները: Մ. ճ-ի մի հատվածն Իրանի հս. շրջաններից ձգվում էր Արաքսի հովիտը՝ Ջուղայի գետանցով դեպի Նախճավան և Արտաշատ, այնտեղից՝ Սև ծովի նավահանգիստները: «Մ. ճ.»-ի երկարությունը ավելի քան 7 հզ. *կմ* էր: Իր գոյության առաջին դարերում «Մ. ճ.»-ով առևտրի միջնորդության համար գերակշիռ դեր ձեռք բերելու նպատակով սուր պայքար էր գնում Հռոմի և Պարթևստանի թագավորության առևտրական վերնախավերի միջև: V—VI դդ. «Մ. ճ.»-ի զգալի մասը պարսկա-սողդիական վաճառականների ձեռքում էր, իսկ Արաբական խալիֆայության կազմավորումից (VII դ.) հետո գերակշռություն ստացան արաբ առևտրականները: Տոնվագնացության հետագա զարգացման հետևանքով, սկսած XIV դ., «Մ. ճ.»-ի նշանակությունը գնալով նվազեց: «Մ. ճ.» մեծ չափով նպաստեց Ասիայի և Եվրոպայի ժողովուրդների տնտ. և մշակութային կապերի զարգացմանը: *Լ. Պետրոսյան*

**ՄԵՏԱՔՍՅԱ ԳՈՐԾՎԱԾՔՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ**, *տեքստիլ արդյունաբերության* ճյուղ, որը զուտ մետաքսյա, բնական ու սինթետիկ, ինչպես նաև խառը մանրաթելերից գործվածքներ է արտադրում: *Մետաքսագործության* հայրենիքը Չինաստանն է: Ռուսաստանում Մ. գ. ա. սկսել է զարգանալ XVII դ. վերջերից: Բոժոժամանման արտադրությունը կենտրոնացված էր Անդրկովկասում, մասնավորապես՝ Ռուսաստանի կենտրոնական շրջանում (Մոսկվա և Մոսկվայի նահանգ), բոժոժի հիմնական մասն արտահանվում էր, իսկ մետաքսահումքի 80%-ը՝ ներմուծվում: Մետաքսյա գործվածքները բարձրորակ էին, իսկ դիպակե և նախշավոր տեսակներն արտահանվում էին տարբեր երկրներ: Մ. գ. ա-յան համալիր զարգացումն սկսվեց սովետական իշխանության հաստատումից հետո: Աճեց մետաքսահումքի, մետաքսյա գործվածքների արտադրության ծավալը, ընդլայնվեց արտադրանքի տեսականին: Մինչև 1941-ը մետաքսագործական ու հումքի մշակման ձեռնարկություններ կառուցվեցին Սամարղանդում, Լենինաբադում, Թբիլիսիում, Երևանում են: Հայրենական մեծ պատերազմի տարիներին Լենինաբադի, Մարգելանի և Օշայի ֆաբրիկաների բազայի վրա կազմակերպվեցին մետաքսյա գործվածքների խոշոր կոմբինատներ, իսկ Օրենբուրգում՝ մանածագործական արտադրություն: Ետպատերազմյան շրջանում ճյուղի ձեռնարկություններն ընդլայնվեցին, կառուցվեցին նորերը (Կրասնոյարսկում, Կալինինում, Լենինգրադում են), ներդրվեցին բարձրարտադրողական սարքավորումներ: Դրա շնորհիվ 1979-ին, 1940-ի համեմատ, ՍՍՀՄ-ում մետաքսյա գործվածքների արտադրությունն ավելացավ 25,9 անգամ, կազմեց 1724 մլն *մ²*:

Սոցիալիստական մյուս երկրներից Մ. գ. ա. առավել զարգացած է Լեհաստանում (1979-ին արտադրվել է 181 մլն *մ²* մետաքսյա գործվածք), ԳԴՀ-ում (120 մլն *մ²*), Ռումինիայում (130 մլն *մ²*), իսկ կապիտալիստական երկրներից՝ ԱՄՆ-ում (7600 մլն *մ²*), Ճապոնիայում (2790 մլն *մ²*) և ԳՖՀ-ում (390 մլն *մ²*):

Հայկական լեռնաշխարհում *շերամապահությամբ* և *մետաքսագործությամբ* զբաղվել են հեռավոր ժամանակներից: Ֆեոդալական կալվածքներում և հատուկ «գործատներում» պատրաստվում էին մետաքսաթել, գործվածքներ և «*Մետաքսի ճանապարհով*» արտահանվում հարևան ու հեռավոր երկրներ: Ռուսաստանին միավորվելուց հետո (1828) Արևելյան Հայաստան մուտք գործեց ռուս. մետաքսյա գործվածքը, որն աստիճանաբար դուրս մղեց տեղական տնայնագործական արտադրանքը: Սակայն բոժոժից մետաքսաթելերի ստացումն ու գործվածքների արտադրությունը պահպանվեց և XIX դ. 60-ական թթ. ստացավ մանուֆակտուրային բնույթ: Դարավերջին Հայաստանում գործում էր տարեկան 350—400 փութ մետաքսաթել արտադրող 32, նաև տնայնագործական սեզոնային 7 արհեստանոց, որոնք հիմնականում կենտրոնացված էին Երևանի նահանգում ու Մեղրու շրջանում: Ընդ որում, գործվածք թողարկելու համար մետաքսաթելի մոտ 70%-ը առաքվում էր Ռուսաստան: Առաջին համաշխարհային պատերազմի և դաշնակների տիրապետության տարիներին շերամապահությունն անկում ապրեց, մետաքսաթելի ու գործվածքների արհեստանոցները փակվեցին: Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո միջոցներ ձեռնարկվեցին շերամապահության վերականգնման, մետաքսաթելի ու Մ. գ. ա-յան ստեղծման ու զարգացման համար: 1921-ին մետաքսաթելի ու գործվածքների ձեռնարկությունները ազգայնացվեցին, այնուհետև վերացվեցին մետաքսաթելի մանր արհեստանոցները: 1928-ին գործարկվեց Երևանի Մարտի 8-ի անվ. մետաքսաթելի ֆաբրիկան, որին 1931-ին հանձնվեց Ղափանի մետաքսաթելի ֆաբրիկայի ամբողջ սարքավորումը: 1940-ին արհեստագործական կոոպերացիայի Երևանի ու Շահումյանի մետաքսյա գործվածքների արտելները միավորվեցին և ընդգրկվեցին թեթև արդյունաբերության համակարգի մեջ: 1953-ին դրանց բազայի վրա ստեղծվեց *Երևանի մետաքսի կոմբինատը*, որին միավորվեց նաև Մարտի 8-ի անվ. մետաքսաթելի ֆաբրիկան (1958-ին): Մ. գ. ա-յան ձեռնարկությունների սարքավորումների նորացման, քիմ. մանրաթելերի արտադրության զարգացման շնորհիվ աճել է արտադրության ծավալը, ընդլայնվել թողարկվող գործվածքների տեսականին: 1979-ին արտադրվել է 21,7 մլն *մ²* մետաքսյա գործվածք: Ճյուղի տեխ. զարգացման գիտահետազոտական ու կոնստրուկտորափորձարարական աշխատանքներով զբաղվում է թեթև և տեքստիլ մեքենաշինության համամիութենական ԳՀԻ-ի Երևանի մասնաճյուղը:

*Գրկ.* Սովետական Հայաստանի տնտեսական զարգացումը, 1920—1960, Ե., 1960: Դ ա ր յ ա ն Վ. Ա., Թեթև արդյունաբերության զարգացումը Սովետական Հայաստանում, Ե., 1960: Ն ու յ ն ի, Шелковая промышленность Армянской ССР, Е., 1956; К о р н е е в А. М., Текстильная промышленность СССР и пути ее развития, М., 1957. *Վ. Դարյան*

**ՄԵՏԱՏԱԶ** (*մետա*... և հուն. φάσις — երևալը, հայտնվելը), տես *Միտոզ*:

**ՄԵՏԱՖԻԶԻԿԱ**, 1. փիլիսոփայության բնագավառ, որը հավակնում է մտահայեցողական եղանակով հետազոտելու ամբողջությամբ վերցրած աշխարհը, կեցության սկզբունքներն ու վերջնական պատճառները՝ ի տարբերություն մասնավոր գիտությունների, որոնք առանձնացնում են կեցության մի մասը և սահմանափակվում անմիջական փորձնական պատճառներով: Արիստոտելի գործերը դասակարգելիս «Մ.» անունը (հուն. μετά τά φυσικά — բնության մասին գիտությունից՝ ֆիզիկայից հետո) տրվել է նրա «առաջին փիլիսոփայությանը» վերաբերող գործերին՝ նկատի ունենալով, որ դրանցում հետազոտվում է այն, ինչ կարող է ճանաչվել բնությունից հետո, որովհետև ընկած է նրանից այն կողմ, նրա հետևում՝ կազմելով նրա հենքը: Հայ միջնադարյան փիլիսոփաները Դավիթ Անհաղթի միջոցով ծանոթացել են այս անտիկ ավանդույթը: Միջնադարում, կողքնելով կապն աշխարհի գիտական հետազոտության հետ, Մ. աստիճանաբար միավեց աստվածաբանությանը՝ որպես աշխարհի հոգևոր նախասկզբի, աստվածային էության բնական ըմբռնման եղանակ: Նոր ժամանակում փորձնական բնագիտության և փիլ-յան դասականները մերժեցին միջնադարյան Մ. և առհասարակ արտափորձային վերացական «թաքնված էությունների» ու մտահասու «վերջնական պատճառների» գաղափարը՝ միաժամանակ ընդունելով «բնական փիլիսոփայության» կազմում, ֆիզիկայի հետ միասին, «առաջին փիլիսոփայության» անհրաժեշտությունը, որը հետազոտում է աշխարհի անվերջ բազմազանությունը միասնության հանգեցնող վերջավոր պարզագույն ձևերը (Ֆ. Բեկոն), վերացական հասկացությունները (Թ. Հոբս, Բ. Սպինոզա) են: Մետաֆիզիկական համակարգեր կառուցեցին Ռ. Դեկարտը և Գ. Լայբնիցը: Նույն ժամանակին են վերաբերում նաև Ստեփանոս Լեհացու կողմից Արիստոտելի «Մետաֆիզիկայի» հայերեն թարգմանությունը և մեկնաբանությունը, որոնք կրոնափիլիսոփայական գաղափարախոսության տիրապետության պայմաններում նպաստեցին աշխարհիկ փիլ-յան միտումների զարգացմանը: Բնագիտության ինքնուրույն զարգացումը XVIII դարից սկսած առաջկայացուրկ դարձրեց Մ-ի գոյաբանական նկրտումները: Սակայն Մ. գոյատևեց զանազան տարբերակներով (գերմ. դասա-

կան փիլ-յան Մ., Է. Հուսեռլի ֆենոմենոլոգիան, Ն. Հարտմանի «նոր գոյաբանությունը», Մ. Հայդեգերի «հիմնարար գոյաբանությունը» ևն), որքանով որ մարդկային ճանաչողությունից սկզբունքորեն անբացառելի է մտահայեցողությունը, որպես գիտությունների աշխարհայացքային սինթեզի միջոց: Այս իմաստով «Մ.» տերմինը երբեմն օգտագործվում է որպես «փիլիսոփայության» համանիշ: XIX դ. գերմ. դասական իդեալիզմի ոգով մետաֆիզիկական համակարգեր են ստեղծել Պ. Էմմանուելյանը և Ա. Գուրգենյանը (տես նաև *Գոյաբանություն*): 2. *Դիալեկտիկային* հակադիր մեթոդ: «Մ.» տերմինը հակադիալեկտիկայի իմաստով գործածել է Գ. Հեգելը՝ նկատի ունենալով XVIII դ. Մ-ի, հատկապես Ք. Վոլֆի համակարգի առանձնահատկությունները: Մարքսիզմի դասականները, մատերիալիստական դիալեկտիկան մշակելով պատմության մատերիալիստական ըմբռնման և բնագիտության արդյունքների ընդհանրացման հիման վրա, այն հակադրել են Մ-ին որպես մտածողության այնպիսի եղանակի, որը հավակնում է նախապես ընտրված սխեմայի միջոցով տալու աշխարհի մեկընդմիշտ ավարտուն պատկերը: Մ. բացառում է հակասությունները, աշխարհի որակական բազմազանությունը կա՛մ համարում է կողք-կողքի տրված, առանց անցումների [բույսերի և կենդանիների տեսակների անփոփոխականության, բնության և մարդկության պատմության «շրջապտույտի» և «հավերժական վերադարձի», կատակլիզմների (կատաստրոֆների) տեսություններ ևն], կա՛մ էլ հանգեցնում է մեկ ընդհանուր հիմքի (մեխանիցիզմ, պրեֆորմիզմ, ֆիզիկալիզմ ևն): Սրա վրա է հիմնված զարգացման մետաֆիզիկական ըմբռնումը որպես միայն քանակական փոփոխություններով կատարվող սահուն էվոլյուցիայի: *Իմացաբանության մեջ Մ.* դրսևորվում է իբրև ճանաչողության որևէ կողմի (զգայությունների կամ վերացական մտածողության, փորձի կամ տեսության) բացարձակացում, նրա ընթացքի միակողմանի ըմբռնում, երբ նկատի չեն առնվում որակական անցումները գիտելիքի ստացման և պատմական զարգացման մեջ, ճանաչողությունը դիտվում է որպես վերջնական, ավարտուն ճշմարտությունների գումար (դոգմատիզմ) կամ, ընդհակառակը, բացարձակացվում է գիտելիքի հարաբերականությունը (ռելյատիվիզմ):

*Գրկ.* Մ ա ր ք ս Կ. և Է ն գ ե լ ս Ֆ., Սուրբ ընտանիք..., Ե., 1967: Է ն գ ե լ ս Ֆ., Անտի-Դյուրինգ, Ե., 1967: Ն ու յ ն ի, Բնության դիալեկտիկա, Ե., 1969 (ըստ առարկայացանկի): Լ ե ն ի ն Վ. Ի., Փիլիսոփայական տետրեր, Երկ., հ. 38: Շ ա ք ա ր յ ա ն Հ., Մետաֆիզիկայի իմացաբանական էությունը, Ե., 1967: А р и с т о т е л ь, Метафизика, Соч., т. 1, кн. 4, гл. 1, 2, М., 1976; Д е к а р т Р., Начала философии. Избр. произведения, М., 1950; Е г о ж е, Метафизические размышления, там же; Л е й б н и ц Г., Рассуждение о метафизике. Избр. философские соч., М., 1890; К а н т И., Критика чистого разума, Соч., т. 3, М., 1964, с. 86—100, 680—692; Г е г е л ь Г., Наука логики. §§ 26—36; Ն ու յ ն ի Энциклопедия философских наук, т. 1, М., 1974; W u n d t M., Geschichte der Metaphysik, B., 1931; P o p p e r K., The Logic of Scientific Discovery, N. Y., 1959, ch. 1, § 4; Ն ու յ ն ի, Conjectures and Refutations, L., 1969, ch. 8; D e G e o r g e R. T., Classical and Contemporary Metaphysics, N. Y., 1962.
*Հ. Գևորգյան*

**ՄԵՏԱՖԻԶԻԿԱԿԱՆ ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄ**, տես *Մատերիալիզմ*:

**ՄԵՏԱՖՈՐ** (< հուն. μετέφορά — փոխադրում, պատույտ), տես *Փոխաբերություն*:

**ՄԵՏԵՈՐ** (< հուն. μετέωρα — երկնային երևույթ), տես *Աստղ*:

**«ՄԵՏԵՈՐԱ»**, գիտական, հասարակական և գրական կիսամյա հանդես: Լույս է տեսել 1880—81-ին, Զմյուռնիայում: Խմբագիր՝ Գ. Մսերյան: Նպաստել է արևմտահայ լուսավորական-դեմոկրատական շարժմանը, անդրադարձել հայ ժողովրդի արմ. հատվածի պատմական ճակատագրին, մատնանշել ինքնօգնությունը և հավաքական գործունեությունը, որպես ազատագրության ուղի: Մեծ տեղ է հատկացրել կաթոլիկ եկեղեցու և նրա միսիոներների դեմ մղվող պայքարին: Պրոպագանդել է գիտության նվաճումները, ընդգծել նրա դերն ու նշանակությունը հասարակության առաջընթացի ճանապարհին: Տպագրել է Պ. Փիշարի, Է. Լիթրեի, Է. Զոլայի աշխատությունները՝ խմբագրի առաջաբաններով: Գրական և հայագիտական նյութերի շարքում արժեքավոր են Գյոթեի «Ֆաուստի» անդրանիկ թարգմանությունը, Խ. Պաղտասարյանի «Վարդի վեպ» պոեմը, Ք. Պատկանյանի «Խուզարկություն հայ լեզվի կազմության վրա» ուսումնասիրությունը: «Մ.»-ին աշխատակցել են Մ. Նուպարյանը, Գ. Խորասանճյանը, Ս. Ոսկանյանը (Օրպել), Գ. Կոստանդյանը (Տայտր) և ուրիշներ: *Մ. Հակոբյան*

**ՄԵՏԵՈՐԱՅԻՆ ԱՆՁՐԵՎ**, տես *Աստղերի հոսք*:

**ՄԵՏԵՈՐԻՏՆԵՐ**, տես *Երկնաքարեր*:

**ՄԵՏԵՌԼԻՆԿ** (Maeterlinck) Մորիս (1862—1949), բելգիացի գրող: Գրել է ֆրանսերեն: Ուսումնասիրել է իրավաբանություն (Փարիզում): 1896-ից ապրել է Ֆրանսիայում: Ի հակադրություն բուրժ. պոզիտիվիզմի, նրա նատուրալիստական արվեստի՝ Մ. վաղ շրջանում ունեցել է իդեալիստական սիմվոլիստական հայացքներ, որոնք շարադրված են «Խոնարհների գանձը» (1896) փիլ. էսսեում: Հրատարակել է «Ջերմոցներ» (1889), «12 երգ» (1896, 1900-ին՝ «15 երգ») բանաստեղծությունների ժողովածուները, «Իշխանուհի Մալենը» (1889, հայ. հրտ. 1972), «Քույր Բեատրիսը» (1900), «Մոննա Վաննան» (1902, հայ. թրգմ. և բեմ. 1902), «Սուրբ Անտոնիոսի հրաշքը» (1903, հայ. թրգմ. և բեմ. 1922), «Սթիլմոնդի քաղաքապետը» (1919, հայ. հրտ. 1922) և այլ պիեսներ: «Կապույտ թռչուն» (1908, հայ. հրտ. «Մահը և կապույտ թռչունը», 1914) հեքիաթ-պիեսը լի է բնության ուժերի, սովի, պատերազմի նկատմամբ մարդու հաղթանակի հավատով: «Իմաստունն ու ճակատագիրը» (1898) գրքով սկսվել է Մ-ի ճանաչողական ու էթիկական բնույթի էսսեների շարքը: Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին (1914—18) դատապարտել է գերմ. միլիտարիզմը («Նշանադրություն», 1918): Գրել է նաև «Տարածության կյանքը» (1928), «Աստծո առջև» (1937) միստիցիզմով հագեցած տրակտատները, «Մեղուների կյանքը» (1901), «Ծաղիկների բանականությունը» (1907), «Մրջյունների կյանքը» (1930) բնափիլիսոփայական գրքերը: Մ. 1940-ին մեկնել է ԱՄՆ, Ֆրանսիա է վերադարձել 1947-ին: Նրա 1896—1918-ի շրջանի հումանիստական պիեսները մտել են համաշխարհային թատրոնի խաղացանկը: Նոբելյան մրցանակի դափնեկիր (1911): *Ա. Գասպարյան*

**ՄԵՏԵՌՆԻԽ**, Մ ե տ ե ռ ն ի խ-Վ ի ն ն ե բ ու ր գ (Metternich-Winneburg), Կլեմենս Վենցել Լոտար (1779—1859), իշխան, ավստրիական պետական գործիչ և դիվանագետ: 1809—21-ին եղել է արտաքին գործերի մինիստր և փաստորեն ավստ. կառավարության ղեկավարը, 1821—48-ին՝ կանցլեր: Մ. ջանացել է Ավստրիային վերադարձնել նապոլեոնյան պատերազմներում կորցրած հողերը: 1812-ին Ֆրանսիայի (որը պատրաստվում էր Ռուսաստանի դեմ պատերազմի) հետ կնքել է դաշնակցային պայմանագիր: Ռուսաստանում Նապոլեոնի պարտությունից հետո հանդես է եկել «հաշտարար միջնորդության» առաջարկով՝ ձգտելով այդ միջնորդությունն օգտագործել ի շահ Հաբսբուրգների: Մեծ դեր է խաղացել Վիեննայի կոնգրեսում (տես *Վիեննայի կոնգրես 1814—15*): Մ. *Սրբազան դաշինքի* գլխավոր կազմակերպիչներից էր: Այսպես կոչված մետեռնիխյան սիստեմը ուղղված էր բոլոր երկրներում հեղափոխական, լիբերալ և ազգային-ազատագրական շարժման դեմ: 1848—49-ի հեղափոխության սկզբին Մ. փախել է Ավստրիայից, 1851-ին վերադարձել է, սակայն ակտիվ մասնակցություն չի ունեցել քաղ. կյանքին:

**ՄԵՏԻՍՆԵՐ** (ֆրանս., եզակի թիվը՝ métis, < ուշ լատ. misticius — խառը, < լատ. misceo — խառնել), միջռասայական ամուսնություններից սերվածները: Մարդաբանորեն գրավում են միջանկյալ դիրք խառնասերվող ռասաների միջև: Ամերիկայում Մ. են անվանում սպիտակամորթների ու հնդկացիների ամուսնություններից սերածներին:

**ՄԵՏՆԵՐ** Նիկոլայ Կարլովիչ [24.12.1879 (5.1.1880), Մոսկվա —13.11.1951, Լոնդոն], ռուս կոմպոզիտոր, դաշնակահար: 1900-ին ավարտել է Մոսկվայի կոնսերվատորիայի Վ. Սաֆոնովի դաշնամուրի դասարանը (երաժշտության տեսություն ուսումնասիրել է Ա. Արենսկու և Ս. Տանեևի մոտ): Համերգներ է տվել Ռուսաստանում, 1904-ից նաև արտասահմանում, կատարել է հիմնականում իր երկերը: 1909—10-ին և 1915—21-ին եղել է Մոսկվայի կոնսերվատորիայի պրոֆեսոր (դաշնամուր): 1921-ին մեկնել է արտասահման, 1936-ից հաստատվել Լոնդոնում: 1927-ին համերգներով հանդես է եկել ՍՍՀՄ-ում: Ա. Սկրյաբինի և Ս. Ռախմանինովի հետ Մ. ռուս. դաշնամուրային երաժշտության խոշոր վարպետ է: Գրել է 3 կոնցերտ, 14 սոնատ, շուրջ 40 «Հեքիաթ», «Մոռացված մեղեդիներ» (3 տետր): Լավագույն սոնատներից են՝ «Իդիլիա», «Ողբերգական», «Հիշողություն»: «Հեքիաթ»-ները (էպիկական, քնարական, դրամատիկ) պիեսներ

են՝ հիմնված ռեալ և ֆանտաստիկ կերպարների հակադրման վրա: Մ. ունի շուրջ 100 ռոմանս՝ ռուս և գերմանացի բանաստեղծների տեքստերով: Գրել է նաև դաշնամուրային կվինտետ, ջութակի 3 սոնատ, մանրանվագներ: Մ-ի երաժշտական ոճը ձևավորվել է դասականների (Մոցարտ, Բեթհովեն), ռոմանտիկների (Շուման, Վագներ) ավանդույթների, ռուս. ժող. ու հոգևոր երաժշտության հիման վրա: Բնորոշ են՝ ռոմանտիկ երազանքներն ու փիլ. խորհրդածությունները, ռացիոնալ խստությունն ու զգացմունքների արտահայտման խորությունը:

*Երկ.* Муза и мода, Париж, 1935; Повседневная работа пианиста и композитора, М., 1963. *Ս. Բարսամյան*

**ՄԵՏՈՆԻՄԻԱ** (հուն. μετωνυμία — վերանվանում), տես *Փոխանունություն*:

**ՄԵՏՍՅՈՒ** (Metsu, Metsue) Գաբրիել (1629—1667), հոլանդացի նկարիչ: Ստեղծագործել է Լեյդենում և Ամստերդամում: Մ-ի աշխատանքները, որոնք կրում են Ռեմբրանդի, Գ. Տերբորխի, Յա. Վերմերի ազդեցությունը, աչքի են ընկնում լուսաստվերի նուրբ և առարկաների, գործվածքների մակերեսների վիրտուոզ մշակումով: Կոլորիտը ստեղծվել է գունային նրբին հակադրություններով: Բյուրգերների կենցաղը պատկերող նրա նկարները տոգորված են միապաղաղ, փոքր-ինչ ֆլեգմատիկ տրամադրությամբ («Հիվանդը և բժիշկը», Էրմիտաժ, Լենինգրադ):

...**ՄԵՏՐ** (< հուն. μέτρον — չափ), բարդ բառերի վերջնամաս, որ նշանակում է՝ 1. չափիչ սարք (օրինակ, *ամպերմետր*, *բարոմետր*), 2. երկարության չափ մետրական համակարգում (օրինակ, դեցիմետր, կիլոմետր):

**ՄԵՏՐ** (ֆրանս. métre, < հուն. μέτρον — չափ), 1. երկարության միավորը միավորների մետրական և միջազգային համակարգերում: Նշանակվում է *մ* (միջազգային նշանակումը՝ m): 2. Երկարության միավորի՝ Մ-ի վերարտադրության համար գործածվող երկարության չափ: 1791-ին Ֆրանսիայում ընդունված առաջին սահմանման համաձայն Մ. հավասար է եղել Փարիզի միջօրեականի քառորդ երկարության $1\cdot 10^{-7}$ մասին: 1872-ին Միջազգային մետրական հանձնաժողովը հրաժարվել է այդպիսի սահմանումից և իբրև Մ-ի էտալոն ընդունել պլատինի (90%) և իրիդիումի (10%) համաձուլվածքից պատրաստված X-աձև լայնական հատույթով խազգծված չորսվակը: Մ-ի նախատիպը և երկու ստուգիչ պատճենները պահպանվում են Սևրի Չափերի և կշիռների միջազգային բյուրոյում: Մ-ի միջազգային նախատիպի 31 պատճեններից երկուսն էլ (№ 11 և 28) պահպանվում են ՍՍՀՄ-ում: Սակայն, ելնելով գծային չափումների ճշգրտության նկատմամբ աճող պահանջներից, չափերին և կշիռներին նվիրված XI գլխավոր կոնֆերանսը 1960-ին ընդունել է Մ-ի նոր սահմանում, որն ընկած է *Միավորների միջազգային համակարգի* հիմքում: Ըստ այդ սահմանման՝ Մ. հավասար է վակուումում կրիպտոն-86 ատոմի $2p^{10}$ և $5d^5$ մակարդակների միջև անցմանը համապատասխանող ճառագայթման 1650763,73 ալիքի երկարության: Մ-ի վերարտադրության բարձր ճշգրտություն ապահովելու համար պետք է խստիվ պահպանել առաջնային էտալոնային ճառագայթման վերարտադրության պայմանները (տես նաև *Չափերի մետրական համակարգ*):

**ՄԵՏՐ**, երաժշտության *ռիթմի* կազմակերպման համակարգը: Գոյանում է ժամանակի շեշտված («ուժեղ») և անշեշտ («թույլ») մասերի ցիկլային հավասարաչափ պուլսացիայից, որը տևողությունների միասնական չափման և դրանց բազմազան հարաբերությունների իրականացնելու հիմք է դառնում: Ամեն մի ցիկլը կազմում է մեկ *տակտ*: Լինում են պ ա ր զ (երկմաս և եռամաս), բ ա ր դ (միանման պարզ բաղկացուցիչներից կազմված), խ ա ռ ը (տարբեր բաղկացուցիչներից կազմված), պարբերաբար և ոչ պարբերաբար հ ա ջ ո ր դ ա փ ո խ վ ո ղ ու ա ն կ ա ն ո ն Մ-եր կամ տակտեր (տես նաև *Չափ*): Մ. հասկացությունը ծագել է անտիկ արվեստում: Սկզբնական դերն է եղել՝ բանաստեղծությունն ու մեղեդին իրենց միասնության մեջ ենթարկել ժամանակային համամասնականության գեղագիտական սկզբունքին: Որոշիչ եղել է խոսքի Մ. (երկար և կարճ ձայնավորներով շեշտված և անշեշտ վանկեր): Չափանմուշը, որին բազմապատիկ են եղել վանկային բոլոր տևողությունները, կոչվել է պրոտոս քրոնոս (πρῶτος χρόνος — առաջնային, հիմնական ժամանակ): Մ. երաժշտության արտահայտչամիջոց է և, որպես այդպիսին, գործում է ռիթմի հետ համատեղ, նրան ենթարկված վիճակում: Մ. ունի նաև այս կամ այն սեփական արտահայտչականությունը, օրինակ, երաժշտական երկի հնչյունները միմյանց հարաբերակցվում են նաև յուրատեսակ մետրական ֆունկցիայով (տակտային ուժեղ մասերում առանձնահատուկ ընդգծվում են ևն), երկմաս Մ. ընդհանուր առմամբ առաջ է բերում առավել պարզ, բնական (կենսական երևույթներում շատ նմանակներ ունեցող) շարժման զգացողություն, եռամաս Մ. «սահուն», «հոսուն» է՝ ավելի «պարային», քան թե «երթային», խառը Մ-երը, ինչպես և տարբեր Մ-երի միաժամանակյա զուգորդումը (այսպես կոչված բ ա զ մ ա մ ե տ ր ը), ստեղծում են լրացուցիչ դինամիկա ևն: Որոշ պարատեսակների համար է որոշակի Մ., այդպիսի դեպքում Մ., բնորոշ ռիթմական բանաձևերի հետ համատեղ, հանդես է գալիս նաև որպես ժ ա ն ր ա յ ի ն տարր: Խառը, հաջորդափոխվող և անկանոն Մ-երը առավել տարածված են արլ. ժողովուրդների երաժշտության մեջ: Հայ ժող. երգերում և պարերում հանդիպում են տարբեր ներքին կառուցվածք ունեցող հնգամաս (2+3, 3+2), յոթնամաս (2+2+3, 2+3+2, 3+2+2), ութնամաս (3+3+2 ևն), իննամաս, տասնամաս և այլ, բազմազան խառը Մ-եր, որոնք այդ երաժշտության գրավիչ առանձնահատկություններից են: *Ռ. Աթայան*

... **ՄԵՏՐԻԱ** (< հուն. μετρέω — չափել), բարդ բառերի մաս, որ համապատասխանում է հայկական «...չափություն» մասին, օրինակ, *գրավիմետրիա*, *ռեֆրակտոմետրիա*:

**ՄԵՏՐԻԿԱԿԱՆ ՏԱՐԱԾՈՒԹՅՈՒՆ**, բազմություն, որի ցանկացած x և y տարրերի (կետերի) համար սահմանված է $\rho(x; y)$ հեռավորությունը (մետրիկան), ընդ որում Մ. տ-յան ցանկացած x, y և z կետերի համար բավարարվում են հեռավորության աքսիոմները.

1. $\rho(x; y)>0$, եթե $x\neq y$, և $\rho(x; x)=0$,
2. $\rho(x; y)=\rho(y; x)$,
3. $\rho(x; z)\leqslant\rho(x; y)+\rho(y; z)$ (եռանկյան անհավասարությունը):

Ցանկացած Մ. տ. *տոպոլոգիական տարածություն* է, որում բաց բազմությունները բաց գնդերի միավորումներն են (R շառավղով և $x_0$ կենտրոնով բաց գունդը՝ $\rho(x; x_0)<R$ պայմանին բավարարող կետերի բազմությունն է):

Մ. տ. անվանում են լ ր ի վ, եթե այդ տարածության ցանկացած $\{x_n\}$ հաջորդականության համար, որը բավարարում է $\rho(x_n; x_m)\to 0$, (երբ $n, m\to\infty$) պայմանին, կարելի է նշել այդ տարածության այնպիսի $x_0$ տարր, որ $\rho(x_n, x_0)\to 0$, երբ $n\to\infty$: Մ. տ. կոչվում է ս ե պ ա ր ա բ ե լ, եթե այդ տարածությունում կա կետերի մի այնպիսի հաշվելի բազմություն (տես *Հզորություն* բազմության), որ տարածության ցանկացած $x_0$ կետի համար գոյություն ունի այդ հաշվելի բազմության կետերից կազմված $\{x_n\}$ հաջորդականություն, որի համար $\rho(x_n; x_0)\to 0$, երբ $n\to\infty$: Լրիվ և սեպարաբել Մ. տ-յան օրինակ է $R^n$ էվկլիդեսյան n-չափանի տարածությունը (երբեմն նշանակում են $E^n$), որի տարրերն են $\vec{x}=(x_1,\ldots,x_n)$ իրական թվերի կարգավորված n-յակները:

$R^n$-ում $\vec{x}=(x_1,\ldots, x_n)$ և $\vec{y}=(y_1,\ldots, y_n)$ կետերի միջև հեռավորությունը սովորաբար տրվում է $\rho_1(\vec{x}; \vec{y})=\sqrt{(x_1-y_1)^2+\ldots(x_n-y_n)^2}$ կամ $\rho_2(\vec{x}; \vec{y})=\max\limits_{i\leqslant i\leqslant n}|x_i-y_i|$ բանաձևերով: Նույն բազմությունում մետրիկան կարելի է տալ տարբեր ձևերով և ստանալ տարբեր տոպոլոգիական տարածություններ: Օրինակ, [0,1] հատվածում անընդհատ ֆունկցիաների բազմությունում մետրիկան կարելի է տալ $\rho_1(x; y)=\max\limits_{0\leqslant t\leqslant 1}|x(t)-y(t)|$ և

$$\rho_2(x; y)=\int_0^1|x(t)-y(t)|dt$$

բանաձևերով, ըստ որում $\rho_1$ մետրիկայով տարածությունը լրիվ է, իսկ $\rho_2$-ով՝ ոչ:

Մ. տ. հասկացությունը մտցրել է ֆրանսիացի մաթեմատիկոս Մ. Ֆրեշեն (Fréchet M., 1878—1973), 1906-ին:

**ՄԵՏՐ-ՄՈՄ**, *լուսավորվածության* չափման հնացած միավոր: 1 Մ-մ. լուսավորվածություն ստեղծում է 1 *մոմ* լույսի ուժ ունեցող աղբյուրը իրենից 1 *մ* հեռու գտնվող և ճառագայթներին ուղղահայաց մակերևույթի վրա: Մ-մ. թվապես հավասար է *լյուքսին*:

**ՄԵՏՐՈՆՈՄ** (< հուն. μέτρον — չափ և νόμος — կանոն), չ ա փ ա հ ա ր, երաժշտության կատարման արագությունը

ճշգրիտ որոշելու և վերարտադրելու գործիք: Բաղկացած է ճոճանակից և մեկ րոպեում նրա տատանումների քանակը ցույց տվող սանդղակից: Ճոճանակի տատանման տարբեր հաճախականությունները ընդունվում են որպես երաժշտական ստեղծագործության մետրական որևէ միավորի բացարձակ տևողություն: Կիրառվում է XVII դ. վերջից: Տարածված է ավստրիացի Յո. Մելցելի կատարելագործած Մ. (1816), որով Բեթհովենը իր երկ 106 Սի-բեմոլ մաժոր սոնատում և Իններորդ սիմֆոնիայում առաջինն է նշել կատարման արագությունը: Ներկայումս կան տարբեր կոնստրուկցիաների (մասնավորապես՝ գրպանի ժամացույցի ձևի և էլեկտրական) Մ-ներ: Բեմական և ֆիլմային տեսարանների երաժշտության ճշգրիտ զուգորդման համար գործածվում է Կ. Բլյումի երաժշտական խրոնոմետրը (1926): *Ռ. Աթայան*

**ՄԵՏՐՈՊՈԼԻՏ**, միտրոպոլիտ (հուն. μητροπολίτης — մայրաքաղաքացի), հոգևոր բարձր պաշտոնյա քրիստոնեական եկեղեցիներում: Սկզբնապես եղել է տըվյալ նահանգի գլխավոր քաղաքի (մետրոպոլիայի, որից և անվանումը) եպիսկոպոսը Հռոմեական կայսրությունում: Մ-ի իրավասության շրջանակները վերջնականապես որոշվել են Նիկիայի 1-ին տիեզերաժողովում (325), ապա Անտիոքի եկեղեցաժողովում (341): Մ-ները իրավունք ունեին գումարել նահանգի եկեղեցական ժողովները, հսկել իրենց հոգևոր իշխանությանը ենթակա գավառների եկեղեցական գործերը: Մ-ներին ընտրում էին եպիսկոպոսները: Արևմտյան Եվրոպայում V դարից հետո Մ-ների իրավասության շրջանակները նեղացել են, հետըզհետե նրանք հավասարվել են եպիսկոպոսներին (բացառությամբ Անգլիայի, ուր ցարդ պահպանվել է Մ-ի հոգևոր իրավազորությունը): XI դարից Մ-ները զրկվել են նույնիսկ գավառներում եկեղեցական ժողովներ հրավիրելու իրավունքից: XIX դ. կաթոլիկ եկեղեցիներում Մ. պաշտոնը անվանական էր, հիշվում էր սոսկ որպես տիտղոս: Բողոքական եկեղեցիներում Մ-ների իրավունքները որոշ չափով պահպանվեցին: Ռուսաստանը մինչև 1589-ը (պատրիարքության հաստատվելը) դիտվել է որպես մեկ մետրոպոլիտություն՝ Մ-ի գլխավորությամբ, որը մինչև XIII դ. նստում էր Կիևում, ապա՝ Վլադիմիրում, իսկ XIV դարից՝ Մոսկվայում:

Հայաստանյայց եկեղեցում, ըստ Հովհաննես Դրասխանակերտցի պատմիչի, Մ. պաշտոնը եղել է տակավին IV դարից և պահպանվել նաև հետագայում (XIII դ. Սյունյաց Մ. էր պատմագիր Ստեփանոս Օրբելյանը ևն): Հայ եկեղեցական նվիրապետության մեջ Մ. դասվել է ընդհանրական և տեղական կաթողիկոսներից հետո: Երբեմն Էջմիածնի Մայր աթոռը Մ-ի տիտղոսը շնորհել է եպիսկոպոսներին, սոսկ որպես պատիվ:

**ՄԵՏՐՈՊՈԼԻՏԵՆ**, մետրո (ֆրանս. métropolitain, < հուն. μητρόπολις — գլխավոր քաղաք, մայրաքաղաք), քաղաքային արտափողոցային երկաթուղի՝ ուղևորների զանգվածային շտապ փոխադրումների համար: Մ. աչքի է ընկնում մեծ թողունակությամբ, գնացքների շարժման կանոնավորությամբ և շահագործման բարձր արագությամբ: Մ-ի գծերն անցնում են ստորգետնյա *թունելներով*, *ուղանցներով* կամ փողոցի հատուկ առանձնացված տեղամասերով: Առավել տարածված են Մ-ի ստորգետնյա գծերը: Դրանք չեն խախտում քաղաքի հատակագիծը, չեն սահմանափակում գետնընթաց տրանսպորտի և հետիոտների երթևեկությունը: Մ-ի անհրաժեշտությունը, հիմնականում, զգացվում է 1 մլն և ավելի բնակչություն ունեցող քաղաքներում (տես *Քաղաքաշինություն*):








1. Երևանի մետրոպոլիտենի բացումը. ժապավենը կտրում է ՀԿԿ ԿԿ առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը, 2 «Երիտասարդական» կայարանը, 3. «Լենինի հրապարակ» կայարանը, 4. «Բարեկամություն» կայարանը, 5. «Սարալանջի» կայարանը, 6 «Սասունցի Դավիթ» կայարանի նախասրահը

Մ. կառույցների և սարքերի մեծ համալիր է, որը բաղկացած է կայարաններից, նախասրահներից, շարժասանդուղքային սարքերից, տեղափոխման թունելներից, միահավաքման խցերից և փակուղիներից, վագոնային դեպոներից, քարշիչ և ցածրացնող էլեկտրական ենթակայաններից, ինչպես նաև ինժեներային և սանտեխնիկական սարքավորման, օդափոխման, ջրամատակարարման և ջրհանման համար նախատեսված թունելային կառույցներից: Մ-ի կառույցների համալիրում առանձնահատուկ տեղ են գրավում կայարանները, նախասրահները և գնացքները փոխելու հանգույցները, որոնք անմիջականորեն կապված են ուղևորների սպասարկման հետ: Մ-ի խորանիստ կայարաններում ուղևորների վեր բարձրացումն ու իջեցումը սովորաբար կատարվում է *շարժասանդուղքներով*:

Ոչ խորանիստ կայարանները կառուցվում են, հիմնականում, մակաբացման եղանակով: Վրածածկումը կատարվում է կանգնակա-հեծանային կամ կամարակապ կոնստրուկցիաներով, որոնք նախատեսված են 1—2,5 *մ* խորության հողաշերտի և գետնընթաց փողոցային տրանսպորտի բեռնվածքները կրելու համար:

Խորանիստ կայարանները, սովորաբար, ներկայացնում են 2, 3 կամ մի քանի թունելների զուգակցում: Թունելի երեսարկը կատարվում է թուջե կամ երկաթբետոնե *տյուբինգներից* պատրաստված և միմյանց հետ միացված փակ օղակներով:

Մ-ի սարքավորման կարևորագույն հանգույցներն են էլեկտրամատակարարման

և արհեստական օդափոխման համակարգերը: Գնացքների երթևեկության անվտանգությունը (առանձին հատվածներում արագությունը հասնում է 90 *կմ/ժ*) ապահովվում է ԱԿՈՒ (ազդանշանում, կենտրոնացում, ուղեկապում) համակարգով: Լայն կիրառում է ստանում գնացքների ավտոմատ կառավարումը:

1860—63-ին Լոնդոնում կառուցվել է 3,6 *կմ* երկարությամբ առաջին արտափողոցային երկաթուղին՝ շոգեքարշով գնացքների համար: Եվրոպական մայր ցամաքի հնագույն Մ-ներից են Բուդապեշտի (1896) և Փարիզի (1900) Մ-ները: Հետագայում Մ-ներ են կառուցվել Բեռլինում (1902), Ֆիլադելֆիայում (1907), Համբուրգում (1912), Բուենոս Այրեսում (1913), Մադրիդում (1919), Տոկիոյում (1927), Բարսելոնում և Օսլոյում (1928), Աթենքում (1930), Ստոկհոլմում (1933), Մոսկվայում (1935) և Լենինգրադում (1955):

ՍՍՀՄ առաջին՝ Մոսկվայի Վ. Ի. Լենինի անվ. Մ-ի կառուցումը սկսվել է 1932-ին: 1935-ին շահագործման են հանձնվել 11,6 *կմ* ընդհանուր երկարությամբ առաջին գծերը՝ 13 կայարաններով: 1980-ին Մոսկվայի Մ-ի գծերի երկարությունը 184 *կմ* է (երկգիծ հաշվարկումով), կայարանների թիվը՝ 115: Օրական ուղևորահոսքը կազմում է ավելի քան 6 մլն մարդ:

Երևանի Մ-ի՝ ՍՍՀՄ ութերորդ Մ-ի շինարարությունն սկսվել է 1972-ին: Նրա նախագիծը մշակվել է «Հայպետտրանսնախագիծ» (տրանսպորտային կառուցվածքները) և «Երևաննախագիծ» (տրանսպորտային սխեման և կայարանային կառուցվածքները) ինստ-ներում: Առաջին հերթը (գծի երկարությունը՝ 11,47 *կմ*, փոխադրաունակությունը՝ ժամում 32,6 հզ. մարդ) կապում է կենտրոնի բնակելի շրջանները քաղաքի հվ. արդյունաբերական մասի հետ (մինչև երկաթուղային կայարան): Այն շահագործման է հանձնվել 1981-ի մարտի 7-ին, ունի հինգ կայարան՝ «Բարեկամություն» (ճարտ. Ֆ. Դարբինյան), «Սարալանջի» (ճարտ. Ս. Կնտեղցյան, Ա. Զուրաբյան), «Երիտասարդական» (ճարտ. Ս. Քյուրքչյան), «Լենինի հրապարակ» (ճարտ. Ջ. Թորոսյան, Մ. Մինասյան), «Սասունցի Դավիթ» (ճարտ. Բ. Արզումանյան, Ս. Ներսիսյան, Ա. Իսրայելյան): Այս ուղին նախատեսված է շարունակել մինչև Սպանդարյանի հրապարակ՝ մի կողմից և «ԵրԱԶ» ավտոգործարան՝ մյուսից: Մշակված է Երևանի Մ-ի զարգացման հեռանկարային սխեման (ճարտ-ներ՝ Է. Պալյան, Ֆ. Մարկոսյան, ինժեներ՝ Է. Ստեփանով), ըստ որի Մ-ի ցանցը կլրացվի դեպի Աջափնյակ, Նոր Արեշ, Սեբաստիա, Նորքի զանգված տանող ուղիներով (տես նաև *Ստորգետնյա կառույցներ*):

Գրկ. Пекарева Н. А., Московский метрополитен им. В. И. Ленина, М., 1958; Краткий обзор метрополитенов мира, М., 1958; Волков В. П., Наумов С. Н., Пирожкова А. Н., Тоннели и метрополитены, М., 1964; Пикуль В. С., Резниченко Е. Д., Стародубцева М. С., Метростроение в СССР, М., 1967.

*Լ. Հարությունով, Ս. Միքայելյան*

**ՄԵՏՐՈՊՈԼԻՏԵՆ ԹԱՆԳԱՐԱՆ** (Metropolitan Museum of Art) Նյու Յորքում, ԱՄՆ-ի ամենահարուստ գեղարվեստական հավաքածուն: Հիմնադրվել է 1870-ին, բացվել 1872-ին: Գտնվում է Կենտրոնական զբոսայգում, մասնաճյուղը՝ Ֆորտ-Թրայոն զբոսայգում: Էքսպոզիցիան հիմնականում ստեղծվել է թանգարանին նվիրաբերված մասնավոր հավաքածուներից: Մ. թ-ում կան հետևյալ բաժինները. ամերիկյան գեղանկարչության և քանդակագործության, զենքերի, Հեռավոր Արևելքի և Մերձավոր Արևելքի հին արվեստի, հին եգիպտական արվեստի, հին հուն. և հին հռոմ. արվեստի, իսլամական արվեստի, միջնադարյան արվեստի (մասնաճյուղ), երաժշտական գործիքների, փորագրության և վիմագրության, եվրոպական գեղանկարչության, XX դ. արվեստի, գրքի թանգարան, մանկական թանգարան, զգեստի ինստ.: Համաշխարհային արվեստի գլուխ-գործոցներից Մ. թ-ում են Եվֆրոնիոսի «Սարպեդոնի պատկերով կրատեր»-ը, Ռաֆայելի «Տիրամայրը մանկան և սրբերի հետ», Էլ Գրեկոյի «Տոլեդոյի տեսարանը», Ռեմբրանդի «Արիստոտելը Հոմերոսի կիսանդրու առջև»-ը ևն: Մ. թ-ում պարբերաբար հրատարակվում են «The Bulletin»-ը, «Calender of Events»-ը ևն:

**ՄԵՏՐՈՊՈԼԻՏԵՆ ՕՊԵՐԱ** (Metropolitan Opera), առաջատար օպերային թատրոն ԱՄՆ-ում: Բացվել է 1883-ին, Նյու Յորքում՝ Շ. Գունոյի «Ֆաուստ» օպերայի ներկայացումով: Ստեղծվել է «Մետրոպոլիտեն օպերա հաուզ քամփընի» բաժնետիրական ընկերության միջոցներով: Ֆինանսավորում են խոշոր ֆիրմաները, ընկերությունները, մասնավոր անձինք: Շենքը կառուցվել է ճարտ. Ջ. Ք. Քեյդիի նախագծով (հանդիսասրահը՝ 3625 տեղով): «Մ. օ.» ԱՄՆ-ում միակ մշտական օպերային թատրոնն է (գործում է տարեկան 7 ամիս): Երգչախումբը, նվագախումբը, օժանդակ կոլեկտիվները կայուն են, առաջատար մենակատարներն ու դիրիժորները հրավիրվում են առանձին թատերաշրջանների և ներկայացումների: Օպերաները կատարվում են բնագրի լեզվով (սկզբունքը վերջնականապես հաստատվել է 1910-ական թվականներից): Ամերիկյան և այլ երկրների ժամանակակից կոմպոզիտորների երկեր հազվադեպ են բեմադրվում: Երկացանկը կազմում են դասական երկեր՝ Ջ. Վերդիի, Ջ. Պուչչինիի, Գ. Դոնիցետտիի, Ռ. Վագների, Շ. Գունոյի, Ժ. Բիզեի, Վ. Ա. Մոցարտի, Ռ. Շտրաուսի և այլոց օպերաները: Ներկայացվել են ռուս կոմպոզիտորներ Մ. Պ. Մուսորգսկու («Բորիս Գոդունով») և Պ. Ի. Չայկովսկու («Եվգենի Օնեգին», «Պիկովայա դամա») օպերաները: «Մ. օ.»-ի բեմում հանդես են եկել ականավոր երգիչներ Ս. Առնոլդսոնը, Է. Կարուզոն, Ֆ. Շալյապինը, Է. Դեստինովան, Լ. Բորին, Բ. Ջիլին, Ա. Գալլի-Կուրչին, Տ. Ռուֆֆոն, 1930—40-ական թթ.՝ Է. Պինցան, Յու. Բյոռլինգը, Ջ. Միլանովան, Մ. Լոուրենսը, 1950—70-ական թթ.՝ Ն. Գեդդան, Տ. Գոբբին, Լ. Փրայսը, Ն. Գյաուրովը, Լ. Դելլա Կասաան, Մ. Դել Մոնակոն, Մ. Կալլասը, Ֆ. Կոսսոտտոն, Բ. Նիլսոնը, Ջ. Սաթերլենդը, Ռ. Սկոտտոն, Ռ. Տեբալդին, Է. Շվարցկոպֆը, նաև սովետական երգիչներ Պ. Լիսիցյանը (Վերդիի «Աիդա», 1960), Մ. Բիեշուն (Լեոնկավալլոյի «Պայացներ», 1971): Ներկայացումները ղեկավարել են խոշորագույն դիրիժորներ Ֆ. Մոտլը, Գ. Մահլերը, Ա. Տոսկանինին, Դ. Միտրոպուլոսը, Կ. Բյոմը, Լ. Ստոկովսկին, Լ. Բեռնսթայնը, Զ. Մետան, Հ. Կարայանը և ուրիշներ: 1966-ի սեպտեմբերին թատրոնը տեղափոխվել է «Լինկոլն-սենթր»-ում գտնվող նոր շենքը (ճարտ. Ու. Ք. Հարրիսոն), որ սարքավորված է նորագույն տեխնիկայով: Հանդիսասրահը (3800) տեղով աչքի է ընկնում առաջնակարգ ակուստիկայով:

«Մ. օ.»-ում հանդես են եկել հայ երգիչներ Պաոլո Անանյանը, Մյուզան Սիմոնեն, Շաքե Վարթենիսյանը, Կարպիս Բոյաջյանը: Նշանակալի է այդ թատրոնում Արման *Թոքաթյանի*, Լիլի *Չուգասզյանի*, Լուսին *Ամարայի*, Արա *Բերբերյանի* ներդրումը:

**«ՄԵՏՐՈՊՈԼԻՏԵՆՅԱՆ ՍՏԱՆԴԱՐՏ ՏԱՐԱԾՔՆԵՐ»** (Standard Metropolitan Areas), վիճակագրական հաշվառման համար ԱՄՆ-ում ընդունված տերիտորիալ միավոր, որի կազմի մեջ մտնում է մեկ կամ մի քանի կոմսություն (անկախ դրանց նահանգային պատկանելությունից), եթե դրանցից թեկուզ մեկում կա ավելի քան 100 հզ. բնակիչ ունեցող քաղաք, իսկ մյուս բնակավայրերն էլ այդ քաղաք միջուկի հետ ունեն սոցիալական և տնտ. սերտ կապեր: 1970-ի մարդահամարի տվյալներով առանձնացված 247 «Մ. ս. տ.»-ում կենտրոնացած է երկրի բնակչության ավելի քան 2/3-ը:

*Ս. Քեշիշյան*

**ՄԵՏՐՈՊՈԼԻՏՈՒԹՅՈՒՆ**, եկեղեցական կազմակերպություն: Գլխավորում է *Մետրոպոլիտը* իրավասությանը ենթակա շրջանների հոգևոր-եկեղեցական գործերը:

**ՄԵՑԻԳ** (Maetzig) Կուրտ (ծն. 1911, Բեռլին), գերմանացի կինոռեժիսոր (ԳԴՀ): Գերմ. արվեստի ակադեմիայի անդամ: 1935-ին ավարտել է Բարձրագույն տեխն. դպրոցը: 1933-ից աշխատում է կինոյում: Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին ընդունվել է Գերմանիայի կոմունիստական կուսակցության շարքերը: ԳԴՀ կինոարդյունաբերության կազմակերպիչներից, 1946-ից՝ «ԴԵՖԱ» կինոստուդիայի գեղարվեստական ղեկավարը: Մ-ի կինոնկարներն աչքի են ընկնում հակաֆաշիստական ուղղվածությամբ: Լավագույն ֆիլմերից են՝ «Ամուսնություն ստվերում» (1947), «Աստվածների խորհուրդը» (1950), «Էռնեստ Թելմանն իր դասակարգի որդին է» (1954), «Էռնեստ Թելմանն իր դասակարգի առաջնորդն է» (1955) ևն: 1954-ին Բաբելսբերգում կազմակերպել է Գերմանական բարձրագույն կինոդպրոցը (այժմ՝ Կինոյի և հեռուստատեսության գերմ. բարձրագույն դպրոց): 1955-ից պրոֆեսոր: Արժանացել է ԳԴՀ Ազգային մրցանակների (1949, 1950, 1954, 1959):

**ՄԵՐ** (ֆրանս. maire, < լատ. major — ավագ), տես *Քաղաքագլուխ*:

**«ՄԵՐ ԿՅԱՆՔԸ»**, գրական, հասարակական հանդես: Լույս է տեսել 1910—12-ին, Աստրախանում (24 համար): Խմբագիր-

հրատարակիչ՝ Ա. Ապրեսյան: Լուսաբանել է տեղի հայ համայնքի առօրյան, մտահոգվել հայկ. դպրոցների վիճակով: Անդրադարձել է Աստրախանի հայ գրական-գեղարվեստական ընկերության գործունեությանը, տպագրել առանձին ստեղծագործություններ: Ծանոթացրել է Ռուսաստանի քաղ. կյանքին, միջազգային իրադարձություններին, բողոքի ձայն բարձրացրել *Լենայի գնդակոծության* կապակցությամբ: Դատապարտել է դաշնակցության գործակցությունը երիտթուրքերի հետ:

**«ՄԵՐ ՁԱՅՆԸ»**, քաղաքական, հասարակական և գրական շաբաթաթերթ, ապա՝ եռօրյա: Լույս է տեսել 1907—09-ին, Նոր Նախիջևանում: Խմբագիր-հրատարակիչ՝ Հ. *Մալխասյան*: Հանդես է եկել հայ ազգայնական կուսակցությունների, մասնավորապես դաշնակցության դեմ: Լուսաբանել է Հյուսիսային Կովկասի, Ղրիմի. Նոր Նախիջևանի և Միջին Ասիայի հայերի կյանքը: Կարևոր տեղ է հատկացրել հայկ. դպրոցներին, գրականության ու թատրոնի հարցերին: Տպագրել է գրախոսականներ, ակնարկներ, ֆելիետոններ, գեղարվեստական գործեր: Կազմակերպել է նյութական օգնություն հայ մտավորականներին:

*Գ. Սարգսյան*

**«ՄԵՐ ՆՇԱՆԱԲԱՆՆ Է ՀԱՌԱՋ»**, քաղաքական առաջադիմական շաբաթաթերթ: Լույս է տեսել 1957—64-ին, Բեյրութում (առաջին 2 համարները և 1965-ից՝ «Հառաջ»): Պատասխանատու խմբագիր՝ Գ. *Աղաջանյան*: Լուսաբանել է արաբ. երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը, Լիբանանի և Մերձավոր Արևելքի մյուս երկրների կոմկուսակցությունների գործունեությունը, միջազգային կոմունիստական շարժման հարցերը: Ներկայացրել է ՍՍՀՄ խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը, սոցիալիստական երկրների հաջողությունները, մեծ տեղ հատկացրել Լիբանանի ներքին կացությանն ու արտաքին հարաբերություններին: Լայնորեն պրոպագանդել է սովետահայ գրականության նվաճումները, տպագրել է սփյուռքահայ գրողների (Վ. Շուշանյան, Վահե Հայկ, Արամ Հայկազ, Մ. Աթմաճյան և ուրիշներ) գործեր, բանախոսություններ նրանց մասին: Ծանոթացրել է նաև ռուս դասական ու ժամանակակից գրողներին: Հոդվածներ է նվիրել գեղանկարչության, քանդակագործության, երաժշտության ասպարեզի հայ նշանավոր գործիչներին: Աշխատակցել են Հ. Մատեյանը, Պ. Թյութունճյանը, Գ. Տերտերյանը, Ս. Կուրտիկյանը և ուրիշներ: 1961—63-ին ունեցել է «Հառաջ-Գրական» հավելվածը:

*Գ. Գույումջյան*

**«ՄԵՐ ՈՒՂԻՆ»**, քաղաքական, հասարակական, գրական երկօրյա թերթ: Լույս է տեսել 1931—32-ին, Փարիզում: Համարվում է *«Երևան»* (1925—30-ին, Փարիզ) թերթի շարունակությունը: Ունեցել է խմբագրական կազմ (Գ. Թահմազյան, Ջ. Եսայան և ուրիշներ): Անվերապահորեն կանգնել է Սովետական Հայաստանի բարեկամների դիրքերում, սերտ կապ պահպանել հայրենիքի հետ: Պրոպագանդել է սոցիալիստական հեղափոխության, բանվոր դասակարգի պայքարի գաղափարները ֆրանսիահայ աշխատավորության շրջանում, կոչ արել ֆրանսիացի բանվորների հետ համատեղ ելույթների՝ իրենց իրավունքների պաշտպանության համար, հակադրվել դաշնակցական մամուլի հակասովետական գործունեությանը: Անդրադարձել է միջազգային քաղ. իրադարձություններին: Գրական բաժինը ներկայացրել է Ա. Խաչիկյանի, Վ. Ալազանի, Գ. Մահարու, Վ. Թոթովենցի, նաև համաշխարհային գրականության (Մ. Գորկի, Բ. Շոու, Ռ. Ռոլան ևն) նմուշներ: «Մ. ու.» նախորդել է «Դարբնոց» և «Արշավ» թերթերին (երկուսն էլ՝ 1932-ին):

*Մ. Բաբլոյան*

**ՄԵՐԱԿԱՅԻՆ ՄԵՔԵՆԱ**, մերակների լցման համար նախատեսված *կարի մեքենա*: Մ. մ. կիսաավտոմատ է. մերակների եզրերը կարելուց բացի, այն կտրում է անհրաժեշտ չափսեր և ձև ունեցող անցքեր, ամրացնում մերակի ծայրերը, կտրում ավելորդ թելերը: Ուղիղ և կլոր մերակները սովորաբար շրջակարում են թելերի հասարակ չքանդվող մաքոքային միահյուսմամբ, իսկ ձևավոր մերակները՝ ավելի գեղեցիկ նախշ ստեղծող երկթել շղթայական միահյուսմամբ: Արտադրողականությունը՝ 8 *ժ*-ում 2500—3300 մերակ:

**ՄԵՐԱՆԳՈՒԼՅԱՆ** Արամ Հարությունի [8.6.1902, գ. Չանանաբ (այժմ՝ Նախիջևանի ԻՍՍՀ Օրդուբադի շրջանում)—17.11. 1967, Երևան], հայ կոմպոզիտոր, դիրիժոր, թառահար, մանկավարժ: ՀՍՍՀ ժող. արտիստ (1959): ՍՄԿԿ անդամ 1945-ից: Սովորել է Երևանի կոնսերվատորիայում 1926—28-ին (թառ, դասատու՝ Ս. Օգանեզաշվիլի) և 1937—42-ին (ստեղծագործություն, դասատու՝ Վ. Տալյան): 1927-ին կազմակերպել և մինչև 1967-ը ղեկավարել է ՀՍՍՀ *հեռուստատեսության և ռադիոյի ժող. գործիքների անսամբլը* (1967-ից՝ Մ-ի անվան): 1931—33-ին կոնսերվատորիայում, ապա 7 տարի Ռ. Մելիքյանի անվ. երաժշտական ուսումնարանում դասավանդել է ժող. գործիքների դասարանում: Վոկալ [«Խաչատուր Աբովյան» (խոսք՝ Սարմենի), «Լեռներ հայրենի» (խոսք՝ Վ. Արամունու), Հ. Շիրազի «Սիամանթո և Խաջեզարե» պոեմի համար գրված՝ «Դու ինձ համար», «Ա՜յ զառներ», «Երազիս մեջ», «Ա՜յ աղբյուր» և այլ երգեր] և գործիքային (քառամաս «Պարային սյուիտ», «Հարսանեկան պար», «Վարդեբով պար», «Անահիտ» պար ևն) ստեղծագործություններով, ինչպես և ժող. երգերի ու պարեղանակների բազմաթիվ մշակումներով նպաստել է հայկ. երաժշտության՝ այդ ասպարեզում այժմ տիրապետող ոճի ձևավորմանը: Գրել է նաև «Սայաթ-Նովա» հեռուստատեսային ֆիլմի երաժշտությունը: Մ. թառի նվագի իր սկզբունքներն ու փորձը շարադրել է հատուկ ձեռնարկում (անտիպ): Նրա որոշ գործեր հրատարակվել են առանձին, իսկ 1972-ին նաև մի ժողովածուով:

Իր անսամբլով մասնակցել է հայ արվեստի մոսկովյան 2 տասնօրյակներին (1939, 1956): Պարգևատրվել է «Պատվո նշան» 2 շքանշանով:

*Մ. Մանուկյան*

**ՄԵՐԳԵԼ**, մ ա ռ ն, մ ա ր գ (գերմ. Mergel, ֆրանս. marne, < լատ. marga — կրակավ), նստվածքային ապար. կազմված է կալցիտից կամ դոլոմիտից և կավային միներալներից: Կարբոնատային և կավային բաղադրամասերի փոխհարաբերությունները կարող են տարբեր լինել: Սովորաբար Մ. են համարում այն ապարը, որը պարունակում է 30—90% $CaCO_3$ կամ $MgCO_3$ և, համապատասխանաբար, 70—10% կավային մասնիկներ: Մ-ները լինում են՝ կավային, կրաքարային, կավճանման և դոլոմիտային, իսկ ըստ խառնուրդների՝ սիլիկահողային, գլաուկոնիտային, ավազային, փայլարային, բիտումինոզային, ածխային ևն: Գույնը բազմազան է, ավելի հաճախ՝ բաց: Մ-ները լայնորեն տարածված են բնության մեջ և հանդիպում են բոլոր դարաշրջաններում՝ սկսած պրոտերոզոյից: Օգտագործվում է որպես հումք ցեմենտի արդյունաբերության մեջ:

**ՄԵՐԳԵԼՅԱՆ** Սերգեյ Նիկիտի (ծն. 19.5. 1928, Սիմֆերոպոլ), հայ սովետական մաթեմատիկոս: Ֆիզմաթ գիտ. դ-ր (1949), պրոֆեսոր (1952), ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ (1953), ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1956): ՍՄԿԿ անդամ 1955-ից: Ավարտել է Երևանի համալսարանը (1947), ՍՍՀՄ ԳԱ Ստեկլովի անվ. մաթեմատիկական ինստ-ի ասպիրանտուրան (1949, գիտ. ղեկավար՝ Մ. Վ. Կելդիշ): Մ. եղել է Երևանի մաթեմատիկական մեքենաների ԳՀԻ կազմակերպիչն ու առաջին դիրեկտորը (1956—60), 1962—65-ին և 1971—1979-ին՝ ՀՍՍՀ ԳԱ և Երևանի համալսարանի միացյալ հաշվողական կենտրոնի դիրեկտոր, 1971—74-ին՝ ՀՍՍՀ ԳԱ փոխպրեզիդենտ, 1963—71-ին՝ ՍՍՀՄ ԳԱ մաթեմատիկական բաժանմունքի ակադեմիկոս քարտուղարի տեղակալ և Վ. Ա. Ստեկլովի անվ. մաթեմատիկական ինստ-ի կոմպլեքս փոփոխականի ֆունկցիաների տեսության բաժնի վարիչ: 1975-ից ղեկավարում է Երևանի համալսարանի թվային անալիզի ամբիոնը, 1979-ից՝ ՀՍՍՀ ԳԱ մաթեմատիկայի ինստ-ի կոմպլեքս անալիզի բաժինը:



Ս. Ն. Մերգելյան

Մ-ի հետազոտություններն ընդգրկում են ժամանակակից անալիզի մի քանի բնագավառներ: Նա հիմնարար արդյունքներ է ստացել կոմպլեքս տիրույթում մոտավորությունների տեսության բնագավառում: Իր ստեղծած նոր հզոր մեթոդով սպառիչ կերպով լուծեց կոմպլեքս փոփոխականի ֆունկցիաները բազմանդամներով հավասարաչափ մոտարկելու հնարավորության խնդիրը և դրանով ավարտեց մոտավորությունների տեսության

զարգացման՝ 1930-ական թթ. Մ. Ա. *Լավրենտևի* ու Մ. Վ. *Կելդիշի* հետազոտություններով սկսված փուլը: Այս աշխատանքների համար 1952-ին Մ-ին շնորհվեց ՍՍՀՄ պետ. մրցանակ: Մ. խոր հետազոտություններ է կատարել և արժեքավոր արդյունքներ ստացել կամայական կոնտինուումների վրա բազմանդամներով լավագույն մոտարկման, իրական առանցքի վրա բազմանդամներով կշռային մոտարկման, կոմպլեքս հարթության փակ բազմությունների վրա բազմանդամներով կետային մոտարկման, կոմպակտների վրա հարմոնիկ բազմանդամներով և սահմանափակ կոնտինուումների վրա ամբողջ ֆունկցիաներով հավասարաչափ մոտարկման, հարմոնիկ ֆունկցիաների միակության, դիֆերենցիալ հավասարումների տեսության մեջ Կոշիի խնդրի և այլ հարցերի վերաբերյալ: Մ. մեծ վաստակ ունի միջազգային ճանաչում ստացած հայկ. մաթեմատիկական գիտական դպրոցի կազմավորման ու հետագա զարգացման, Հայաստանում հաշվողական տեխնիկայի ու կիբեռնետիկայի զարգացման գործում: ՀՍՍՀ V և VIII գումարումների Գերագույն սովետի դեպուտատ:

*Երկ.* Некоторые вопросы конструктивной теории функций, «Труды Математического института им. В. А. Стеклова АН СССР», 1951, т. 37; О полноте системы аналитических функций, «Успехи математических наук», 1953, т. 8, в. 4; Несколько замечаний по поводу аппроксимационной задачи С. Н. Бернштейна, «Զեկույցներ ՀՍՍՀ ԳԱ», 1955, հ. 20, № 4: Советская математическая школа, М., 1967 (соавтор Н. Н. Боголюбов).

*Մ. Ջրբաշյան, Վ. Սաղաթելյան*

**ՄԵՐԳԵՄԵՐ** (այժմ՝ Շ ե ր ա ֆ ե դ դ ի ն), լեռնաշղթա Հայկական լեռնաշխարհում, Սերոկի լեռնային համակարգի լեռնաճյուղն է (բարձրությունը՝ 2532 *մ*): Կազմված է միոպլիոցենի հրաբխածին-նստվածքային ապարներից, որոնք կտրվում են Արածանիի կիրճով: Տարածված են շագանակագույն և լեռնամարգագետնային հողերը, որոնց վրա աճում են չոր տափաստանային և մարգագետնային տարախոտեր: Դեպի Մշո դաշտ տարածվող լանջի վրա է Ս. Կարապետ (Գլակա, Իննակնյա) վանքը:

**ՄԵՐԳԵՆԹԱԼԵՐ** (Mergenthaler) Օտմար (1854—1899), պոլիգրաֆիայի բնագավառի գյուտարար, ազգությամբ գերմանացի: 1872-ից բնակվել է ԱՄՆ-ում: 1884-ին հայտնագործել, իսկ 1885-ին կատարելագործել է *լինոտիպը*, որի գյուտն օգտագործելով ամերիկացի ձեռնարկատեր Դոջը 1886-ին կազմակերպել է «Մերգենթալեր լայնոթայփ քամփընի» ֆիրման:

**ՄԵՐԵ-ԹԱՂ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Մոտկանի գավառակում: 1909-ին ուներ 10 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Գյուղի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է բռնագաղթի ճանապարհին:

**ՄԵՐԵՑԿՈՎ** Կիրիլ Աֆանասևիչ (1897—1968), Սովետական Միության մարշալ (1944), Սովետական Միության հերոս (21.3.1940): ՍՄԿԿ անդամ 1917-ից: Կարմիր բանակում ծառայել է 1918-ից: Մասնակցել է 1918—20-ի քաղաքացիական պատերազմին (Արլ. և Հվ. ռազմաճակատներում): Ավարտել է ԲԳԿԲ-ի ռազմ. ակադեմիան (1921): 1936—37-ին որպես կամավոր մասնակցել է Իսպանիայի քաղաքացիական պատերազմին: Սովետա-ֆիննական պատերազմի ժամանակ (1939—1940) եղել է 7-րդ բանակի հրամանատար, 1940-ի օգոստոսից՝ Գլխավոր շտաբի պետ, 1941-ի հունվարից՝ ՍՍՀՄ պաշտպանության ժողկոմի տեղակալ: 1941—45-ի Հայրենական մեծ պատերազմի սկզբին՝ բանակների հրամանատար (7-րդ, 4-րդ, 33-րդ): 1941-ի դեկտեմբեր—1944-ի փետրվարին՝ Վոլխովյան զորքերի հրամանատար, 1944-ի փետրվար—նոյեմբերին՝ Կարելական ռազմաճակատի հրամանատար, 1945-ի ապրիլից՝ Պրիմորիեի զորախմբի հրամանատար: 1945-ի օգոստոսին (որպես Հեռավորարևելյան առաջին ռազմաճակատի զորքերի հրամանատար) մասնակցել է Մանջուրիայում և Հյուսիսային Կորեայում ճապոնական զորքերի ջախջախմանը: Ետպատերազմյան տարիներին՝ Պրիմորիեի, Մոսկովյան, Հյուսիսային և այլ ռազմական օկրուգների հրամանատար: 1955-ից՝ ՍՍՀՄ պաշտպանության մինիստրի օգնական, 1964-ից՝ պաշտպանության մինիստրության գլխավոր տեսուչ: Եղել է ՍՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամ (1956—61), ՍՍՀՄ I—V գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Պարգևատրվել է Լենինի 7, «Հաղթանակ»-ի, Հոկտեմբերյան հեղափոխության, Կարմիր դրոշի 4, Սուվորովի I աստիճանի 2, Կուտուզովի I աստիճանի, ինչպես նաև արտասահմանյան շքանշաններով և մեդալներով: Աճյունն ամփոփված է Կրեմլի պատի մեջ:

**ՄԵՐԶԱ** (Մ ի ր զ ա յ ա ն Հ ո ւ լ ի ո ւ) (Merza Gyula) Դյուլա (1861, Կլուժ—1943, նույն տեղում), հունգարահայ հայագետ, հասարակական գործիչ: Սովորել է Կլուժի և Վիեննայի համալսարաններում, ստացել բժշկ., ապա՝ տնտեսագիտական կրթություն: Բազմիցս այցելել է Վենետիկի Մխիթարյաններին, որտեղ զբաղվել է հայագիտությամբ: Աշխատակցել է Գեռլայի «Արմենիա» հունգ., Բուխարեստի «Արարատ» ռում. հայագիտական ամսագրերին, խմբագրել «Էրդել» հունգ. թերթը: Մեծ ջանքեր է գործադրել Տրանսիլվանիայի հայկ. եպիսկոպոսությունը վերականգնելու (1930) համար: Կլուժի Ազգագրական թանգարանի հիմնադիրներից և առաջին ղեկավարներից է: Հրատարակել է բազմաթիվ հայագիտական աշխատություններ և հոդվածներ, որոնք մեծ նշանակություն են ունեցել հունգարահայերի ազգային ինքնագիտակցությունը բարձրացնելու, հունգարացիներին հայ մշակույթին և պատմությանը ծանոթացնելու գործում: Առանձին գրքերով հրատարակվել են Մ-ի հունգ. «Հայ եպիսկոպոսությունը» (1896), «Տրանսիլվանիայի հայերի ապագան» (1896), «Հայկական խաչը» (1903), «Հայերի Տրանսիլվանիա գաղթելու պատմությունը» (1913) ևն աշխատությունները: Գրել է նաև բանաստեղծություններ: Հունգ. է թարգմանել Մ. Նալբանդյանի «Ազատություն» բանաստեղծությունը: Մ-ի արխիվը պահվում է Կլուժ-Նապոկայի պետ. արխիվում և Ս. Անդրեաս եկեղեցում:

*Ս. Քոլանջյան*

**ՄԵՐԶԵԲՈՒՐԳ** (Merseburg), քաղաք ԳԴՀ-ում, Հալլե օկրուգում, Զաալե գետի ափին: 52,1 հզ. բն. (1978): Կա մեքենաշինություն, ալյումինի գլանվածքի, շինանյութերի արտադրություն, քիմ. և թղթի արդյունաբերություն: Ունի բարձրագույն քիմիատեխնիկական ուսումնարան: Հիմնադրվել է X դ.: Հայտնի են Մ-ի տաճարը (XI—XVII դդ.) և պալատը (XV—XVII դդ.):

**ՄԵՐԺԱՆՈՎ** Վիկտոր Կարապետի (ծն. 15.8.1919, Տամբով), սովետական դաշնակահար և մանկավարժ: Ազգությամբ՝ հայ: ՌՍՖՍՀ արվեստի վաստ. գործիչ (1966): 1941-ին ավարտել է Մոսկվայի կոնսերվատորիան, աշակերտել Ս. Ե. Ֆայնբերգին (դաշնամուր) և Ա. Ֆ. Գեդիկեին (երգեհոն): 1949-ից դասավանդում է Մոսկվայի կոնսերվատորիայում (1964-ից՝ պրոֆեսոր), 1973—78-ին՝ Վարշավայի կոնսերվատորիայում: Աշակերտներից են Վ. Բունինը, Գ. Միեսերովան, Ս. Ցուշկինը, Ֆ. Ֆերնանդեսը, Ա. Շիլլերը, Ա. Ներսիսյանը: 1946-ից՝ Մոսկվայի ֆիլհարմոնիայի մենակատար: 1950-ից հանդես է եկել ջութակահար Ա. Գաբրիելյանի և Կոմիտասի անվ. կվարտետի հետ: Համամիութենական (1945, Մոսկվա) և միջազգային (1949, Վարշավա) մրցույթների դափնեկիր է: Ելույթներ է ունենում ՍՍՀՄ քաղաքներում (այդ թվում՝ Երևանում) և արտասահմանում:

*Շ. Ափոյան*

**ՄԵՐԻ ԲԵՐԴ ԵՐԿԻՐ** (Marie Byrd Land), Արևմտյան Անտարկտիդայի մի մասը Ռոսսի շելֆային սառցադաշտի և Էլսուորթի երկրի միջև: Տարածքի մեծ մասը սառցային սարահարթ է 1000—1500 *մ* բարձրությամբ, ամենաբարձր կետը՝ 4181 *մ*: Սառցածածկույթի հզորությունը 1000—4000 *մ* է: Սառցադաշտի հունը մեծ տարածություններում ծովի մակարդակից ցածր է 500—1500 *մ*: Հայտնաբերվել է 1929-ին և անվանվել ամերիկյան արշավախմբի պետի՝ Ռ. Բերդի կնոջ անունով: 1957—1972-ին այստեղ գործել է ամերիկյան «Բերդ» գիտական կայանը:

**ՄԵՐԻԼԵՆԴ** (Maryland), նահանգ ԱՄՆ-ում, Ատլանտյան օվկիանոսի Չեսապիկի ծոցի ափին: Տարածությունը 27,4 հզ. *կմ*$^2$ է, բն.՝ 4,1 մլն (1974): Վարչական կենտրոնը՝ Աննապոլիս: Ռելիեֆը արլ-ում հարթավայրային է: Կենտրոնում է գտնվում Պիդմոնտ սարավանդը, արմ-ում՝ Ապալաչները (բարձրությունը՝ մինչև 1024 *մ*): Կլիման բարեխառն է, մեղմ և խոնավ:

Տնտեսության հիմնական ճյուղը՝ արդյունաբերությունը, աշխատում է բերովի հումքով և կենտրոնացած է գլխավորապես Բալթիմորում ու նրա արվարձաններում: Արդյունաբերության առաջատար ճյուղը սև մետալուրգիան է: Կա մեքենաշինական, ռադիոէլեկտրոնային, քիմ., նավթավերամշակման, ավիահրթիռային, սննդի, կարի արդյունաբերություն, խոշոր մետաղակառուցվածքների արտադրություն: Գյուղատնտեսության ապրանքային արդյունքի արժեքի 2/3-ը տալիս է անասնապահությունը: Զբաղվում

են նաև թոչնաբուծությամբ, ծխախոտի մշակությամբ, ձկնորսությամբ:

**ՄԵՐԻՄԵ** (Mérimée) Պրոսպեր (27.9.1803, Փարիզ —23.9.1870, Կանն), ֆրանսիացի գրող: Ֆրանս. ակադեմիայի անդամ (1844): Էկզոտիկ երկրների նկատմամբ Մ-ի ռոմանտիկ հետաքրքրությունն է արտացոլված նրա «Կլարա Գասուլի թատրոնը» (1825) պիեսների ժողովածուում: «Գուզլա» (1827) ժողովածուի գործերում բացահայտված են հասարակության հետ բախման մեջ գտնվող հերոսների բնավորությունները: Նա Ֆրանսիայի պատմական անցյալին է դիմել «Ժակերի» (1828) դրամատիկ ժամանակագրության մեջ և «Կարլոս IX-ի գահակալության ժամանակագրությունը» (1829) վեպում: 1820-ական թթ. վերջերի նովելներում («Խճանկար», ժող., 1833) Մ. վերստին ստեղծել է ուժեղ և ամբողջական կերպարներ, որոնք դեռ զերծ են քաղաքակրթության «քայքայիչ» ազդեցությունից («Մաթեո Ֆալկոնե», 1829, հայ. հրտ. 1905, «Թամանգո», 1829, հայ. հրտ. 1938): 1830—40-ական թթ. արձակը Մ-ի ստեղծագործության բարձրակետն է: Այս շրջանի նովելներում հեգնանքով ու ծաղրանքով են ներկայացված բուրժ. հասարակության ունայնությունն ու երեսպաշտությունը, փողի իշխանությունը («Կրկնակի սխալ», «Արսեն Գիյո» ևն), բուրժ. բարոյախոսությանը հակադրված են պարզունակ, բայց ավելի ճշմարիտ բարոյական նորմաներ («Կոլոմբ», 1841, հայ. հրտ., «Աղավնի», 1863, «Կարմեն», 1846, հայ. հրտ. 1936): «Լոքիս» (1869, հայ հրտ. 1936) նովելում դրսևորվել է հեղինակի հետաքրքրությունը սլավոնական թեմատիկայի նկատմամբ: Մ. գրել է նաև գիտական աշխատություններ՝ «Նոթեր Հարավային Ֆրանսիա կատարած ճանապարհորդությունից» (1835), միջնադարյան ճարտ-յան հետազոտություններ, Հին Հռոմի, Իսպանիայի, Ուկրաինայի, Ռուսաստանի պատմությանը վերաբերող ուսումնասիրություններ, քննադատական հոդվածներ: Մ-ի գործերի սյուժեներով գրվել են պիեսներ, երաժշտական կատակերգություններ, օպերաներ (Ժ. Բիզե, «Կարմեն», 1875), ստեղծվել են կինոնկարներ:

*Երկ.* Ընտիր նովելներ, Ե., 1963:

*Ն. Վարդանյան*



Պ. Մերիմե



Ֆ. Մերինգ

**ՄԵՐԻՆԳ** (Mehring) Ֆրանց (1846—1919), միջազգային և գերմանական բանվորական շարժման գործիչ, մարքսիստ փիլիսոփա, պատմաբան: Սովորել է Լայպցիգի և Բեռլինի համալսարաններում (1866—1870): 1882-ից փիլիսոփայության դ-ր: 1891-ից Գերմանիայի ս-դ. կուսակցության անդամ: Այդ ժամանակից էլ պրոպագանդել է մարքսիստական աշխարհայացքը, պայքարել հանուն բանվոր դասակարգի շահերի, հանդես եկել ընդդեմ ռևիզիոնիզմի և օպորտունիզմի: Ողջունել է 1905—07-ի ռուս. հեղափոխությունը: Մասնակցել է «Ինտերնացիոնալ» խմբի ստեղծմանը, որը 1916-ին վերակազմավորվեց *«Սպարտակ միության»*: Մերկացրել է 1914—18-ի առաջին համաշխարհային պատերազմի իմպերիալիստական բնույթը, դատապարտել ս-դ. կուսակցության պարագլուխների շովինիստական քաղաքականությունը: Առաջիններից էր Արևմուտքում, որ պաշտպանել և պրոպագանդել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության գաղափարները: Մ. Գերմանիայի կոմունիստական կուսակցության հիմնադիրներից է:

Ուսումնասիրել է հին հուն. և գերմ. դասական փիլիսոփայությունը, քննադատել է. Հարտմանի, Ֆ. Նիցշեի, Ա. Շոպենհաուերի և այլ իդեալիստ փիլիսոփաների հայացքները: Հրատարակության է պատրաստել Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի երկերն ու նամակները, գրել է Կ. Մարքսի կենսագրությունը: Մ. պատմության մատերիալիստական ըմբռնումը կիրառել է գրականագիտության և արվեստագիտության մեջ: Պատմական աշխատություններում՝ «Լեգենդ Լեսսինգի մասին» (1893), «Գերմանիայի պատմությունը միջին դարերի վերջից» (1910) ևն Գերմանիայի պատմությունը շարադրված է մարքսիստական սկզբունքներով: «Գերմանական սոցիալ-դեմոկրատիայի պատմությունը» քառահատոր աշխատությունում և բանվորական շարժման պատմության վերաբերյալ այլ երկերում Մ. գերմ. բանվորական շարժումը ուսումնասիրել է համաեվրոպական պատմության առնչությամբ և ցույց տվել նրա սերտ կապը պրոլետարիատի ինտերնացիոնալ պայքարի հետ: Մ. թույլ է տվել մի շարք սկզբունքային սխալներ. չի հասկացել Պ. Պրուդոնի, Մ. Ա. Բակունինի, Ֆ. Լասսալի հակապրոլետարական հոսանքների դեմ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի մղած պայքարի էությունը:

*Երկ.* Կ. Մարքսի «Կապիտալ»-ի համառոտ շարադրանքը, Ե., 1924 (Ռ. Լյուքսեմբուրգի հետ): Կ. Մարքս: Նրա կյանքի պատմությունը, Ե., 1961: Литературно-критические статьи, М.—Л., 1964.

*Գրկ.* Լ ե ն ի ն Վ. Ի., Ֆր. Մերինգը Երկրորդ Դումայի մասին, Երկ. լիակտ. ժող., հ. 15: Ն ու յ ն ի, II Ինտերնացիոնալի կրախը, նույն տեղում, հ. 26: Маркс К. и Энгельс Ф., Соч., 2 изд., т. 34—36, 38—39 (տես անվանացանկը): Слуцкий А. Г., Франц Меринг: Революционер, учёный, публицист, М., 1979.

**ՄԵՐԻՆՈՍՆԵՐ**, միատարր, նուրբ բրդածածկով ոչխարների ցեղեր: Հայրենիքը համարում են Փոքր Ասիան, որտեղ դրանք բուծվել են սկսած մ. թ. ա. III—II դդ.: Հետագայում տարածվել են միջերկրածովյան երկրներ, իսկ XVIII դ. կեսերին՝ Արևմտյան Եվրոպա, Հյուսիսային Ամերիկա, Ավստրալիա: Ռուսաստանում XIX դ. վերջին և XX դ. սկզբին ստեղծվել են ռուս. ինֆանտադո, մազաևյան և նորկովկասյան ցեղեր: Սովետական ոչխարաբույծները ստացել են բարձր մթերատու մերինոսային ոչխարների ցեղեր՝ ասկանիական, կովկասյան, սովետական մերինոս, ալթայան, ստավրոպոլյան, գրոզնենյան ևն: Մ-ի բուրդը նուրբ է, սպիտակ, բրդաթելերի հաստությունը 15—25 *մկմ* է, երկարությունը՝ 6—8 *սմ*: Խուզում են տարեկան մեկ անգամ: Խոյերի բրդատվությունը 8—12 *կգ* է, մաքիներինը՝ 4—6 *կգ*: Բրդի մաքուր ելունքը՝ 35—45%: Մ. տրամախաչում են կոպտաբուրդ և կիսանրբագեղմ ոչխարների հետ՝ վերջիններիս բրդատվության բարելավման նպատակով: ՀՍՍՀ-ում տեղական ոչխարները նրբագեղմ և կիսանրբագեղմ ուղղությամբ վերափոխելու նպատակով օգտագործվել են կովկասյան նրբագեղմ և սովետական մերինոս ցեղերը:

*Մ. Քարամյան*

**ՄԵՐԻՍԹԵՄԱ** (< հուն. μεριστός — բաժանելի), ա ռ ա ջ ա ց ն ո ղ հ յ ո ւ ս վ ա ծ ք, բույսերի հյուսվածք, որը երկար ժամանակ պահպանում է կիսվելու և նոր բջիջներ առաջացնելու ունակությունը: Մ-ի ի ն ի ց ո ղ բջիջները միշտ գտնվում են սաղմնային վիճակում և կիսվելով ապահովում են բույսի աճումը: Մ-ի մյուս բջիջներն աստիճանաբար տարբերակվելով առաջացնում են բույսի հիմնական հյուսվածքներ (ծածկող ևն): Մ. առաջանում է սաղմի պ ր ո տ ո մ ե ր ի ս թ ե մ ա յ ի ց, որից գոյանում են գագաթային Մ. (ցողունի և արմատի աճման կոնը) և կողմնային Մ. (պրոկամբիումը և կամբիումը): Աճման ընթացքում Մ. մասնակիորեն պահպանվում է բույսի տարբեր մասերում, արմատներում, ընձյուղների միջհանգույցներում, տերևների հիմքերում, բողբոջներում ևն: Մ-ի բջիջները մշտական հյուսվածքների բջիջներից տարբերվում են իրենց մանրությամբ, խիտ դասավորությամբ, բարակ առաջնային թաղանթով, կենտրոնական կորիզով, էնդոպլազմային ցանցի, միտոքոնդրիաների և դիկտիոսոմների թույլ զարգացվածությամբ, ռիբոսոմների մեծ քանակով և նյութափոխանակության ակտիվությամբ:

**ՄԵՐԻԽԵՈՒԼԻ**, գյուղ Աբխազական ԽՍՀ Գուլրիփշի շրջանում, շրջկենտրոնից 18 *կմ* հյուսիս-արևելք: Բնակիչները՝ հայեր, վրացիներ, աբխազներ, ռուսներ: Կոլտնտեսությունն զբաղվում է ծխախոտի, թեյի և եգիպտացորենի մշակությամբ, այգեգործությամբ, անասնապահությամբ, մեղվաբուծությամբ, շերամապահությամբ: Ունի միջնակարգ հայ-վրացական դպրոց, հայկ. տարրական դպրոց, գրադարան, ակումբ, կինո, կապի բաժանմունք, հիվանդանոց, կենցաղսպասարկման կոմբինատ: Հայերը եկել են Տրապիզոնի և Օրդուի շրջակա գյուղերից, 1897-ին:

**ՄԵՐԿԱՆՏԻԼԻԶՄ** (իտալ. mercante — առևտրական, վաճառական), բուրժուական քաղաքատնտեսության ուղղություն և պետության տնտեսական քաղաքականություն, որն արտահայտում էր *կապիտալի նախասկզբնական կուտակման* դարաշրջանի առևտրական բուրժուազիայի շահերը: Բնորոշվում էր երկու հիմնական գծերով. ա. հարստությունը նույնացնում էր դրամի հետ (պետության հարստությունը գնահատվում էր կուտակված դրամի քանակով), բ. դրամական հարստության

կուտակման միջոց էր համարում պետ. իշխանությունը: Տարբերում են վաղ և ուշ (զարգացած) Մ.: Վ ա ղ Մ-ի (XV դ. վերջ—XVI դ. կես) գլխավոր դրույթը «դրամական հաշվեկշռի» տեսությունն էր, որը հիմնավորում էր զուտ օրենսդրական ուղիով դրամական հարստությունն ավելացնելու քաղաքականությունը: Դրամը երկրում պահելու նպատակով արգելվում էր այն արտահանել, վալյուտայով առևտուրը համարվում էր պետության մենաշնորհը, վաճառքից ստացված դրամական բոլոր միջոցներն օտարերկրացիները պարտավոր էին ծախսել տեղական ապրանքներ գնելու վրա: Վաղ Մ-ի ներկայացուցիչները (Ու. Սթաֆորդ, Գ. Սկառուֆի և այլք) դրամը համարում էին միայն կուտակման միջոց, չէին կռահում առևտրի և դրամաշրջանառության կապը: Ու շ Մ-ի (XVI դ. 2-րդ կես—XVII դ.) տեսական հիմքը ակտիվ «առևտրական հաշվեկշռի» գաղափարն էր, ըստ որի պետությունն այնքան հարուստ է, որքան մեծ է արտահանվող և ներմուծվող ապրանքների արժեքների տարբերությունը: Վերջինն ապահովվում էր երկրից ապրանքներն արտահանելու և միջնորդական առևտրի միջոցով, մի երկրից էժան գնելու, մյուսում՝ թանկ վաճառելու սկզբունքով: Առևտրական ակտիվ հաշվեկշիռ ապահովելու և արտաքին շուկաներ զավթելու նպատակով կառավարությունը հարկային համակարգի օգնությամբ կարգավորում էր օտարերկրյա ապրանքների ներմուծումը, խթանում արտահանումը: Ուշ Մ-ի տեսաբանները (Թ. Մեն, Ա. Սեռա, Ա. Մոնկրետիեն) դրամը համարում էին ապրանք, բայց չէին ըմբռնում, թե ապրանքն ինչպես և ինչու է դառնում դրամ, շրջանցում էին ապրանքի արժեքի պրոբլեմը, շահույթի գլխավոր աղբյուրը համարում էին արտաքին առևտրում ապրանքների անհամարժեք փոխանակությունը ևն: Մ-ի քաղաքականությունը դրսևորվում էր արդյունաբերության խթանման, ակտիվ պրոտեկցիոնիզմի (տես *Հովանավորման համակարգ*), առևտրական կապիտալի էքսպանսիան սատարելու, հարկային դրույքները կտրուկ բարձրացնելու մեջ: Կապիտալիզմի զարգացմամբ Մ-ի հիմնական դրույթները սպառեցին իրենց. բուրժուազիան առաջադրեց տնտ. նոր տեսություններ, որոնց հիմքում ընկած էր առևտրի և ձեռնարկատիրության ազատության պահանջը (տես *Ֆիզիոկրատականություն*):

**ՄԵՐԿԱՁԵՐ** (Ablepharus), մողեսների ենթակարգի, սցինկայինների ընտանիքի սողունների սեռ: Մարմնի երկարությունը մինչև 13 *սմ* է: Վերջավորությունները թույլ են, որոշ տեսակներինը՝ թերզարգացած: Կոպերը սերտաճած են և առաջացնում են թափանցիկ անշարժ թաղանթ (այստեղից՝ «Մ.» անվանումը): Ականջի փոքր անցքերը հաճախ ծածկված են մաշկով կամ թեփուկներով: Ապրում են չոր, քարքարոտ, լեռնային տափաստաններում: Ակտիվ են ցերեկը: Սնվում են հիմնականում միջատներով և այլ անողնաշարավորներով: Բազմանում են ձվադրությամբ, մեկ տեսակը ձվակենդանածին է: Հայտնի է մոտ 30 տեսակ՝ տարածված Աֆրիկայում, Հարավ-Արևելյան Եվրոպայում, Միջին և Առաջավոր Ասիայում, Ավստրալիայում, Խաղաղ օվկիանոսի կղզիներում, ՍՍՀՄ-ում՝ 6 տեսակ: ՀՍՍՀ-ում հանդիպում են շ ե ր տ ա վ ո ր և ե վ ր ո պ ա կ ա ն Մ.: Վերջինս գրանցված է ՍՍՀՄ Կարմիր գրքում:

**ՄԵՐԿԱՊՏՍԱՑՈՍ**, ս ի ս տ ո կ ս, դ ե մ ե տ ո ն, միջատասպան նյութ, ֆոսֆորօրգանական միացություն: Սովորական պայմաններում բաց շագանակագույն հեղուկ է: Միջատասպան հատկությունը պայմանավորված է օրգանիզմի կենսագործունեության համար անհրաժեշտ ֆերմենտները, հատկապես խոլինէսթերազները, ապաակտիվացնելու կարողությամբ: Խիստ թունավոր է: Քիմիապես անկայուն է, արագ քայքայվում է և բույսի վրա երկար չի մնում: Օգտագործվում է բամբակենու և դեկորատիվ բույսերի վնասատուների դեմ պայքարելու համար:

**ՄԵՐԿԱՍԵՐՄԵՐ** (Gymnospermae, Pinophytata), բարձրակարգ բույսերի հնագույն խումբ (բաժին): Միջանկյալ տեղ է գրավում պտերանմանների և ծածկասերմերի միջև: Պտերանմաններից տարբերվում են սերմնաբողբոջների առկայությամբ, ծածկասերմերից՝ պտղաթերթիկների բացակայությամբ: Բազմանում են սերմերով, որոնք զարգանում են ձևափոխված մեգասպորանգիումում՝ սերմնաբողբոջում: Սերմնաբողբոջը և սերմերը բաց կերպով տեղադրված են սպորոֆիլներում: Մ. հիմնականում ծառեր կամ թփեր են: Մ-ի մեծ մասի ջրատար անոթներին փոխարինում են տրախեիդները: Միկրոսպորոֆիլները և մակրոսպորոֆիլները խիստ տարբերվում են չափերով, կառուցվածքով և ձևով: Հայտնի են դևոնյան դարաշրջանի վերջից: Ենթադրվում է, որ Մ. առաջացել են Archaepteardales կարգի անհետացած պտերանմաններից: Հայտնի է Մ-ի մոտ 600 տեսակ՝ տարածված ամբողջ աշխարհում: Մ-ի մեծամասնությունը պատկանում է *փշատերևավորներին*, մոտ 100-ը՝ սագոենիներին, 45-ը՝ էֆեդրա, 40-ը՝ գնետում ցեղերին: Հատկապես մեծ տարածություն են զբաղեցնում փշատերև անտառները: Շատ Մ. ունեն տնտ., մելիորատիվ և դեկորատիվ նշանակություն:

**ՄԵՐԿԱՏՈՐ** [Mercator, Կրեմերի (van Kremer) լատինացված ազգանունը], Գերհարդ (1512—1594), ֆլամանդական քարտեզագիր: Զբաղվել է ճշգրիտ օպտիկական (գեոդեզիական) գործիքների, գլոբուսների, քարտեզների պատրաստումով: Հանույթային աշխատանքներ է կատարել Լոթարինգիայում ու Բավարիայում, կազմել այդ շրջանների առաջին տեղագրական քարտեզները: Իր կազմած քարտեզների ժողովածուն անվանվել է «Ատլաս», որը մտել է համաշխարհային գրականության մեջ և օգտագործվում է աշխարհի բոլոր լեզուներով: Հաշվել է քարտեզագրական գլանային հավասարանկյուն պրոյեկցիան (Մ ե ր կ ա տ ո ր ի պ ր ո յ ե կ ց ի ա), որը ծովային քարտեզների համար մինչև այժմ էլ անփոխարինելի է: Այդ պրոյեկցիայի վրա *լոքսոդրոմիան* պատկերված է ուղիղ գծով, որը հնարավորություն է տալիս արագ ու հեշտ որոշելու նավի կուրսը: Մեծ արժեք է ներկայացնում Մ-ի կազմած և նրա մահվանից հետո՝ 1595-ին որդիների կողմից հրատարակված աշխարհի ատլասը, որը մաթեմատիկական ճշտությամբ և կատարման գեղեցկությամբ իր ժամանակին հավասարը չի ունեցել և օրինակ է ծառայել ուրիշ ատլասներ կազմելու համար:

Մ. որոշել է երկրի մագնիսական բևեռների աշխարհագրական կոորդինատները:

**ՄԵՐԿԵԼ**, Մ ե ր կ ե լ ի ս, Գառլիբ (1769—1850), լատվիական լուսավորիչ: Ազգությամբ գերմանացի: 1793—96-ին գրել է «Լատիշներ...» գիրքը (1797-ին գերմ. հրատարակել է Լայպցիգում), որտեղ հանդես է եկել ճորտատիրության ու եկեղեցու սուր քննադատությամբ, պաշտպանել Լատվիայի գյուղացիությանը հողի հետ ազատագրելու գաղափարը: 1870-ին գիրքը լույս է տեսել ռուս., 1905-ին՝ լատվիերեն, Պետերբուրգում, վերջին հրտ.՝ 1953-ին, Ռիգայում: «Լիվոնիան հին դարերում» (h. 1—2, 1798—99) գրքում Մ. առաջին անգամ տվել է XI—XII դդ. լատիշների և էստոնացիների կյանքի ու մշակույթի պատմության տեսությունը: Մ. Գերմանիայում (ուր տեղափոխվել է 1796-ին) դարձել է հայտնի հրապարակախոս ու գրաքննադատ:

**ՄԵՐԿԵՐ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Գելիեգուզանի գավառում: 1909-ին ուներ 13 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է բռնագաղթի ճանապարհին: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՄԵՐԿՈՒԶԱԼ**, սնդիկային *միպամուղ դեղանյութ*: Օգտագործվում է (միջմկանային) սիրտ-անոթային համակարգի հիվանդությունների, լյարդի ցիռոզի ևն հետևանքով առաջացած այտուցները վերացնելու նպատակով:

**ՄԵՐԿՈՒՐԻ**, հայկական անվանումը՝ Փայլածու, Արեգակնային համակարգի Արեգակին ամենամոտ մոլորակը: Աստղագիտական նշանը ♀: Շարժվում է էլիպսով. միջին հեռավորությունն Արեգակից 58 մլն *կմ* է (արևամերձ կետում՝ 46 մլն *կմ*, արևահեռ կետում՝ 70 մլն *կմ*): Իր առանցքի շուրջը պտտվում է 58, 65, Արեգակի շուրջը՝ 88 երկրային օրում: Պտտման առանցքը և ուղեծրային հարթությունը կազմում են 83° անկյուն: Տրամագիծը 4865 *կմ* է (0,38 երկրային տրամագիծ), զանգվածը՝ $3,304.10^{23}$ *կգ* (0,055 երկրային զանգված), միջին խտությունը՝ 5,52 $գ/սմ^3$: Շարժման ընթացքում Մ-ի առավելագույն անկյունային հեռավորությունը Արեգակից (էլոնգացիան) 28°-ից չի անցնում: Այդ պատճառով դժվար դիտելի է, դիտումները հնարավոր են միայն արևամուտից անմիջապես հետո կամ արևածագից անմիջապես առաջ՝ քառորդ փուլում:

Մ-ի հեռավորությունը Երկրից փոփոխվում է 82—217 մլն *կմ* սահմանում: Անդրադարձնում է իր վրա ընկած լույսի (*ալբեդո*) 7%-ը: Երևում է —0,3-ից 0,6 *աստղային մեծությամբ*: Մ-ի մակերևույթի վրա կան օղակաձև լեռներ, խոր ընկած հարթավայրեր («ծովեր»): Մթնոլորտային ճնշումը մակերևույթի վրա կես մլրդ անգամ

փոքր է երկրայինից (ամենատարածված գազը հելիումն է), այսինքն՝ գործնականորեն մթնոլորտից զուրկ է: Աննշան մթնոլորտի հետևանքով գիշերային ու ցերեկային երեսների ջերմաստիճաններն իրարից շատ են տարբերվում (գիշերը՝ մոտ —140°C, ցերեկը՝ մինչև +350°C):

Մ-ի խառնարաններից մեկը 1976-ին կոչվել է Սայաթ-Նովայի անունով:

**«ՄԵՐԿՈՒՐԻ»**, շուրջերկրյա ուղեծրով թռիչքների համար նախատեսված ամերիկյան առաջին միտեղանի տիեզերանավերի և թռիչքների մշակման ու արձակման (1959—63) ծրագրի անվանումը: Հիմնական խնդիրն էր կառավարվող արբանյակի երկրակենտրոն ուղեծիր դուրսբերումը ու նրա անվտանգ վերադարձը երկիր և տիեզերական տարածությունում մարդու աշխատանքի հնարավորության ուսումնասիրումը: 1959—61-ին կատարվել են փորձնական թռիչքներ: 1961-ին իրականացվել է երկու (մայիսի 5-ին՝ տիեզերագնաց Ա. *Շեփարդ*, հուլիսի 21-ին՝ տիեզերագնաց Վ. *Գրիսոմ*, երկուսն էլ բալիստիկ հետագծով), 1962-ին՝ երեք (փետր. 20-ին՝ տիեզերագնաց Ջ. *Գլեն*, մայիսի 24-ին՝ տիեզերագնաց Ս. *Քարփենթեր*, հոկտ. 3-ին՝ տիեզերագնաց Ու. *Շիրա*), 1963-ին՝ մեկ (մայիսի 15—16-ին՝ տիեզերագնաց Գ. *Կուպեր*) թռիչք:

**ՄԵՐԿՈՒՐՈՌԵԴՈՒԿՏՈՄԵՏՐԻԱ** (լատ. mercurius — այստեղ՝ սնդիկ, reductio — վերականգնում, վերադարձ և ...*մետրիա*), սնդիկաչափություն, քիմիական անալիզի տիտրաչափական եղանակ: Հիմնված է մերկուրոիոնի՝ $Hg_2^{2+}$-ի վերականգնող հատկության վրա, որի լուծույթում գոյություն ունի $Hg_2^{2+} \rightleftarrows Hg^{2+} + Hg^{\circ}$ հավասարակշռությունը ($E^{\circ} = 0,8$ *վ*): Մ. կիրառվում է Au(III), Ce(IV), $MnO_4^-$, $ClO^-$ ն օքսիդիչների քանակական որոշման համար: Ավելի թույլ օքսիդիչները որոշելու համար հետազոտվող լուծույթին ավելացվում են $Hg^{2+}$ իոնի հետ կայուն կոմպլեքսներ առաջացնող իոններ (CNS ն), որոնք իջեցնում են համակարգի պոտենցիալը: Հետազոտվող լուծույթի մեջ $Fe^{2+}$ իոնների ավելցուկ մտցնելիս Մ-ի հնարավորությունները մեծանում են: Օգտագործում են $Hg_2(NO_3)_2$ կամ $Hg_2(ClO_4)_2$ պարունակող աշխատանքային լուծույթներ, որոնք կայուն են և օդում համարյա չեն օքսիդանում: Տիտրման ավարտը որոշում են էլեկտրաքիմիական եղանակով կամ ինդիկատորներով: Եղանակը մշակել և «Մ.» տերմինն առաջարկել է Վ. *Թառայանը*:

*Գրկ.* Тараян В. М., Меркуроредуктометрия, 2 изд., Е., 1980.

**ՄԵՐԿՈՒՐՈՎ** Սերգեյ Դմիտրիի [26.10 (7.11).1881, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)—8.6.1952, Մոսկվա], սովետական քանդակագործ: ՍՍՀՄ (1943), ՀՍՍՀ (1950) ժող. նկարիչ: ՍՍՀՄ Գեղարվեստի ակադեմիայի իսկական անդամ (1947): ՍՄԿԿ անդամ 1945-ից: Նախնական կրթությունն ստացել է Լենինականի յոթնամյա արհեստագործական և Թիֆլիսի ռեալական ուսումնարաններում: 1901-ին սովորել է Կիևի պոլիտեխնիկական ինստ-ում, 1902-ին՝ Ցյուրիխի համալսարանի փիլիսոփայության ֆակուլտետում,

Ս. Դ. Մերկուրով

1902—05-ին՝ Մյունխենի Գեղարվեստի ակադեմիայում: Իտալիայում որոշ ժամանակ մնալուց հետո՝ 1905-ի վերջերին տեղափոխվել է Փարիզ, որտեղ ուսումնասիրել է հին արլ. և հուն. անտիկ արձանագործությունը, շփումներ ունեցել Օ. *Ռոդենի* հետ: 1910-ին վերջնականապես հաստատվել է Մոսկվայում: Մ. սովետական արվեստը հարստացրել է տարբեր բնույթի, ժանրերի և չափերի մի շարք բովանդակալից ու բարձրարվեստ կերտվածքներով: Նրա նախահեղափոխական շրջանի ստեղծագործությունն աչքի է ընկնում եգիպտական մոնումենտալիզմին հատուկ ձևերի խստությամբ (Ֆ. Դոստոևսկու արձանը, գրանիտ, 1911—13, Մոսկվայում կանգնեցվել է 1918-ին), սրված հոգեվիճակների վերարտադրմամբ («Լ. Ն. Տոլստոյ», մարմար, 1911—48, Տրետյակովյան պատկերասրահ, Մոսկվա), ոճավորումով: Սովետական իշխանության առաջին տարիներից Մ. դարձել է *մոնումենտալ պրոպագանդայի* լենինյան պլանի ամենաակտիվ իրականացնողներից մեկը, ստեղծել Կ. Մարքսի (գրանիտ, 1921, Սիմֆերոպոլ), Կ. Ա. Տիմիրյազևի (գրանիտ, 1922—23, Մոսկվա) հուշարձանները: Նրա ստեղծագործության մեջ մեծ տեղ է հատկացված Վ. Ի. Լենինի կերպարին, որի առավել ակնառու նմուշներից են ՍՍՀՄ Գերագույն սովետի նիստերի դահլիճում դրված արձանը (մարմար, 1939, ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1941), 16 մետրանոց գրանիտե մոնումենտը (1937) Մոսկվայի անվ. ջրանցքի գլխամասում, 9 մետրանոց պղնձակոփ մոնումենտը Երևանի Վ. Ի. Լենինի հրապարակում (1940, ճարտ-ներ՝ Ն. Փարեմուզովա, Լ. Վարդանյան): Մ-ին են պատկանում նաև Ս. Շահումյանի գրանիտե հուշարձանը Երևանում (1931, ճարտ. Ի. Ժոլտովսկի), Մ. Վ. Լոմոնոսովի (գիպս, 1944, Մոսկվա), Ֆ. Է. Ձերժինսկու (կոփածո պղինձ, 1948, Ձերժինսկ), Ի. Վ. Ստալինի (Մոսկվայում, Երևանում՝ կոփածո պղինձ, 1950, ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1951) մոնումենտալ արձանները: Սովետական արվեստի նշանակալից կոթողներից են բարդ ու արտահայտիչ խմբավորում ունեցող և ողբերգական պաթոսով աղեկցուն «Բաքվի 26 կոմիսարների գնդակահարումը» բարձրաքանդակը (գրանիտ, 1924—46, տեղադրվել է 1958-ին, Բաքու) և «Առաջնորդի մահը» խմբաքանդակը (գրանիտ, 1927—47, տեղադրվել է 1958-ին, մերձմոսկովյան Գորկի ավանում): Մ. աշխատել է նաև հաստոցային քանդակագործության բնագավառում, որի լավագույն արտահայտությունները դրսևորվել են դիմաքանդակի ժանրում («Մ. Կ. Խուլմոգորով», գիպս, 1935, «Կ. Է. Ցիոլկովսկի», կարմիր գրանիտ, 1940, «Ա. Կ. Տոլստոյ», գրանիտ, 1945 ևն): Մ. սովետական նշանավոր դիմակահան էր (Լ. Ն. Տոլստոյ, Վ. Ի. Լենին և ուրիշներ): Մ-ի տեղը հայ կերպարվեստում նշանակալի է: Մ-ները հունադավան (քաղկեդոնական) հայերից էին, որոնք սովորաբար կոչվում էին «ուռումներ» (կամ՝ «ծաթեր»): Չնայած պաշտոնական փաստաթղթերում հույն արձանագրվելուն, Մ. միշտ նշել է իր հայկ. ծագումը և իր արվեստի սկզբնավորման հայկ. ազդակները: Իր իսկ վկայությամբ, Ջիվանին է նրա մեջ արթնացրել արվեստի սերը, քանդակագործ դառնալուն նպաստել են Ալեքսանդրապոլի եկեղեցիների և շիրմաքարերի քանդակազարդումները, քարգործ և ատաղձագործ վարպետների մոտ է նա ստեղծել իր առաջին քանդակները, տեղի վարպետներից սովորել պղնձի մշակման նրանց ուրույն եղանակը, որը և հետագայում օգտագործել է իր որոշ պղնձակոփ գործերում: Մ. որտեղ որ ապրել և ստեղծագործել է, միշտ կապեր է պահպանել տեղի հայկ. միջավայրի և Հայաստանի հետ: Դրանք առանձնապես ընդլայնվել են ու արգասավոր դարձել Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո: Մ-ի հանած առաջին դիմակը Խրիմյան Հայրիկինն էր (1907), նա է հանել Հ. Թումանյանի դիմակը: Վարպետի դիմաքանդակների շարքում նկատելի տեղ ունեն հայերի կերպարները («Դ. Ֆ. Մերկուրով», գիպս, 1904, «Ս. Շահումյան», գրանիտ, 1929, Տրետյակովյան պատկերասրահ, «Հ. Թումանյան», կոփածո պղինձ, 1930): Մ. մեծապես նպաստել է հայ քանդակագործության գաղափարական ու պրոֆեսիոնալ առաջընթացին, նրանում սոցիալիստական ռեալիզմի մեթոդի ամրապնդմանը: Սերտ են եղել Մ-ի և նրա հայրենի Լենինականի փոխադարձ կապերը: Մ-ին շնորհվել է Լենինականի պատվավոր քաղաքացու կոչում, և ի հավերժացումն մեծ արվեստագետի հիշատակի տեղի նկարչական դպրոցը կոչվում է նրա անունով (1947):

Պատկերազարդումը տես 416—417-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակ XII:

*Երկ.* Записки скульптора, М., 1953.
*Գրկ.* [Тихонова В.], С. Д. Меркуров. [Альбом], М., 1958.

*Վ. Հարությունյան*

**ՄԵՐՁԱՆՏԱՐԿՏԻԿԱԿԱՆ ԳՈՏԻ**, աշխարհագրական գոտի Հարավային կիսագնդում, բարեխառն և անտարկտիկական գոտիների միջև: Օվկիանոսային գոտի է անտարկտիկական մթնոլորտային ճակատի սեզոնային տեղաշարժերի սահմանում՝ հվ. լայնության 65—67° և 58—60° միջև:

Ձմռանը զբաղեցնում են անտարկտիկական, ամռանը՝ բարեխառն լայնությունների օդային զանգվածները: Ձմռանը օդի միջին ջերմաստիճանը —5°C-ից մինչև —15°C է, ջրինը՝ —1,5°C-ից մինչև —2°C: Ամռանը օդի և ջրի ջերմաստիճանը 0—2°C է:

Ձմռանը ամբողջ տարածությունն զբաղեցնում են ձնով ծածկված լողացող սառույցները, շատ են այսբերգները: Հաճախակի են հողմերը, ձնաբքերը և մառախուղները: Կլիմայի դաժանությանը նը-

պաստում են օդի բարձր խոնավությունը և փոթորկային քամիները, որոնք առաջանում են ցուրտ մայր ցամաքի և համեմատաբար տաք ծովի միջև եղած ճնշման մեծ գրադիենտի հետևանքով: Տեղումների տարեկան քանակը 500 *մմ* է, գլխավորապես՝ ձնային: Ամռանը տարածքն ազատվում է սառույցներից: Ջրի աղիությունը տարվա ընթացքում քիչ է փոփոխվում (33—34‰): Բնորոշ է ծովի ալիքայնությունը (ալիքների բարձրությունը՝ 2—5 *մ*-ից մինչև 10 *մ*): Զարգացած է պլանկտոնը, որի շնորհիվ հարուստ է ձկներով և թռչուններով: Մ. գ. կետորսության հիմնական շրջանն է: Կղզիները ծածկված են մամուռներով, քարաքոսերով և թփուտներով:

**ՄԵՐՁԱՎԱՆ**, գյուղ Հայկական ՍՍՀ Էջմիածնի շրջանում, շրջկենտրոնից 6 *կմ* հյուսիս-արևելք: 1947-ից ուսումնափորձարարական բազա է: Այստեղ են գտնվում այգեգործության, պտղագործության և գինեգործության ԳՀԻ, ՀՍՍՀ բույսերի պաշտպանության ինստ-ը, երկրագործության ինստ-ի սելեկցիայի և բուսական ռեսուրսների ուսումնասիրության բաժինը: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, գրադարաններ, կապի բաժանմունք, կինո, հեռախոսային հանգույց, կենցաղսպասարկման տաղավար, մսուրմանկապարտեզ, հիվանդանոց: Հիմնադրվել է 1947-ին:



Մերձավան

**ՄԵՐՁԱՎՈՐ ԱՐԵՎԵԼՔ**, Ասիայի արևմուտքի և Աֆրիկայի հյուսիս-արևելքի տերիտորիաների անվանումը: Այստեղ են գտնվում Եգիպտոսի Արաբական Հանրապետությունը, Սուդանը, Իսրայելը, Հորդանանը, Սիրիան, Լիբանանը, Թուրքիան, Իրաքը, Սաուդյան Արաբիան, Եմենի Արաբական Հանրապետությունը, Եմենի Ժողովրդա-Դեմոկրատական Հանրապետությունը, Քուվեյթը, Արաբական Միացյալ Էմիրությունները, Կատարը, Օմանը, Բահրեյնը, Միջերկրական ծովում գտնվող Կիպրոսի Հանրապետությունը: Արտասահմանյան գրականությունում Մ. Ա-ի երկրները Իրանի և Աֆղանստանի հետ կազմում են Միջին Արևելք հասկացությունը: XIX դ. և XX դ. սկզբում Մ. Ա. հասկացության մեջ մտնում էր Օսմանյան կայսրության ամբողջ տարածքը, ինչպես նաև Բալկանյան թերակղզու երկրները:

**ՄԵՐՁԱՎՈՐ ԱՐԵՎԵԼՔՈՒՄ ԱՄԵՐԻԿՅԱՆ ՕԳՆՈՒԹՅԱՆ ԿՈՄԻՏԵ**, Ամերկոմ (American Committee for Relief in the Near East, ACRNE), ամերիկյան բարեգործական հաստատություն: Ստեղծվել է 1918-ին՝ Հայկական և սիրիական նպաստամատույց կոմիտեների (1915) միավորմամբ՝ Մերձավոր Արևելքի երկրների պատերազմից տուժած և կարիքավոր բնակչության (հայեր, հույներ, ասորիներ ևն) պարենով, հագուստով և դեղորայքով օգնելու նպատակով: Հայաստանում և Անդրկովկասում գործել է 1919-ի մայիսից, երբ Հայաստանի բուրժուական հանրապետության կառավարության հետ կնքված պայմանագրով ստանձնել է հայ որբերի խնամքն ու դաստիարակությունը պետ. մանկատներում, ապաստարաններում, հիվանդանոցներում (1919-ին՝ 75 որբանոց՝ 20 հզ. որբերով, 10 հիվանդանոց, ինչպես նաև Թուրքիայում, Հունաստանում և այլ երկրներում եղած 25 հզ. որբերը): Ամերկոմի գործունեությունը շարունակվել է նաև սովետական իշխանության օրոք: Սովետական Հայաստանի կառավարությունը (1921), իսկ ավելի ուշ Անդրֆեդերացիայի Ժողկոմխորհը (1923) Ամերկոմի հետ կնքած հատուկ համաձայնագրերով հսկողության տակ են առել նրա գործունեությունը՝ սահմանափակելով այն բացառապես բարեգործական շրջանակներում: Որբանոցների կրթության ու դաստիարակության վերահսկողությունը իրականացրել է լուսժողկոմատը: Ամերկոմի ծառայողների (1922-ին՝ 4500 հոգի) վրա տարածվել է սովետական աշխատանքային օրենսդրությունը, նրանք ընդգրկվել են արհմիությունների մեջ: Հայաստանում Ամերկոմի տրամադրության տակ եղել են 7.298 դեսյատին հողամաս, շենքեր, գույք ևն, որոնցից օգտվել է արտոնյալ պայմաններով:

Սովետական Հայաստանի ժող. տնտեսության վերականգնման և ժողովրդի բարեկեցության բարելավման համեմատ Ամերկոմի գործունեությունը նվազել է (1926-ին՝ նրա խնամած որբերի թիվը ՀՍՍՀ-ում կազմել է 7440), իսկ 1931-ին՝ ամբողջովին դադարեցվել: 1923—26-ին սովետական կառավարությունը որբանոցներից դուրս է բերել և ինքնուրույն աշխատանքի տեղավորել ավելի քան 15 հզ. մեծահասակ որբերի: Որբերի և գաղթականների ծանր վիճակը թեթևացնելու գործում ցուցաբերած օգնության համար Ամերկոմի գործունեությունն արժանացել է սովետական կառավարության դրական գնահատականին, թեպետ այդ գործունեության մեջ դրսևորվել են բուրժ. բարեգործությանը հատուկ բացասական գծեր: ԱՄՆ-ի կառավարող շրջանները փորձել են Ամերկոմն օգտագործել նաև հակահեղափոխական, հակասովետական նպատակներով:

1916—26-ին Հայաստանում և Մերձավոր Արևելքի հայաբնակ վայրերում որբանոցներ է պահել և բարեգործական այլ աշխատանքներ է տարել նաև Անգլիական օգնության կոմիտեն (Անգլկոմ):

*Գրկ.* Մելիքսեթյան Հ. Ու., Արևմտահայերի բռնագաղթը և սփյուռքահայերի հայրենադարձությունը Սովետական Հայաստան (1915—1940 թթ.), Ե., 1975: Hovhannisian R. G., The Republic of Armenia, v. 1, Berkeley, Los Angeles, London, 1971.

**ՄԵՐՁԱՐԵՎԱԴԱՐՁԱՅԻՆ ԿԼԻՄԱ**, մերձարևադարձային գոտուն հատուկ կլիմա. ամռանը ձևավորվում է մերձարևադարձային անտիցիկլոնների, ձմռանը՝ միջին լայնությունների ցիկլոնների ազդեցությամբ (տես *Մթնոլորտի շրջանառություն*): Մ. կ-ին հատուկ են պարզ արտահայտված չոր և խոնավ եղանակները: Շրջանների խոնավացման աստիճանը փոփոխվում է կախված տեղումների քանակից՝ ծայրահեղ դեպքում ստեղծելով պայմաններ խոնավ անտառների կամ անապատների գոյության համար: Երկրի մակերևույթի ռադիացիոն հաշվեկշիռը ամբողջ տարին դրական է, ջերմաստիճանի տարեկան ընթացքը՝ լավ արտահայտված: Հարթավայրերում բացակայում է հաստատուն ձնածածկույթը: Տաք պայմանները նպաստում են մշտադալար բուսականության գոյությանը:

Մթնոլորտի շրջանառության սեզոնային փոփոխությունները մեծ տարածությունների վրա պայմանավորում են արմ-ից արլ. խոնավացման զգալի տարբերություններ: Մայր ցամաքների արմ-ում տեղումների տարեկան ընթացքում պարզ արտահայտված է խոնավ ձմեռ և չոր ամառ (Միջերկրածովյան տիպ), արլ-ում՝ մուսսոնային տիպ: Երկու կիսագնդերում Մ. կ. տարածված է 30°—40°, տեղ-տեղ մինչև 25°—45° լայնությունների միջև: ՍՍՀՄ-ում Մ. կ. արտահայտված է Անդրկովկասում, Միջին Ասիայում և Ղրիմի հվ-ում:

**ՄԵՐՁԱՐԵՎԱԴԱՐՁԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐ**, մեծ մասամբ մշտադալար, երբեմն տերևաթափ բազմամյա բույսեր, որոնք մշակվում են մերձարևադարձային գոտում: Մ. կ-ից նարնջենին, կիտրոնը, մանդարինը, գրեյպֆրուտը, թզենին, խուրման, ձիթենին ևն ծառեր են: Տեխ. նշանակություն ունեն թեյը, դափնին, շաքարեղեգը, էվկալիպտը, բամբուկը, եղրիցենին ևն, դեկորատիվ՝ նոճին, արմավենին, մագնոլիան, սեկվոյան ևն: Դրանց մեծ մասը ՍՍՀՄ-ում մշակվում է: Մ. կ. բնորոշվում են ցածր ցրտադիմացկունությամբ և երկարատև վեգետացիայով: Ի տարբերություն արևադարձային բույսերի, Մ. կ-ի աճի ու զարգացման համար պահանջվում է որոշ չափով կայուն ձմեռային հանգստի շրջան: Մերձարևադարձային պտղաբուծությունը զարգացած է գլխավորապես միջերկրածովյան երկրներում: ՍՍՀՄ-ում ամենից շատ (86%) մշակվում է մանդարին: Ցիտրուսայինների պտուղները երկշերտ կեղևով են: Արտաքինը դեղին կամ նարնջագույն է, ունի եթերայուղերով լցված անոթներ, որոնց վնասվելուց պտուղները կորցնում են բույրը և արագ փչանում: Երկրորդ շերտը սպիտակ է, դառը (պարունակում է հեսպերիդին գլյուկոզիդ): Պտուղների սննդային արժեքը շատ բարձր է, պարունակում են շաքարներ, օրգ. թթուներ, վիտամիններ (C, $B_1$, $B_2$, PP, կարոտին), պեկտինային նյութեր, հանքային աղեր, եթերայուղեր, գլյուկոզիդներ: Օգտագործում են թարմ և վերամշակված (հյութ, մարմելադ, մուրաբա, ստանում են յուղ, կիտրոնաթթու ևն) վիճակում, էվկալիպտի տերևները, որոնք պարունակում են 4% եթերայուղ, կիրառվում են բժշկության և օծանելիքի արդյունաբերության, իսկ բնափայտը՝ կահույքի և այլ արտադրության մեջ: Բամբուկի բնափայտից պատրաստում են կա-

հույք և սպորտային առարկաներ: Եղրիզենու պտուղներից ստանում են բարձրարժեք յուղ, որն օգտագործվում է լաքեր ու ներկեր արտադրելու համար:

ՀՍՍՀ մերձարևադարձային գոտին հիմնականում գտնվում է Մեղրու ցածրադիր մասում, որտեղ աճում են թզենի, նռնենի, նշենի: Կիտրոնն աճեցվում է Կարճևանում (1924-ից). ապրիլից մինչև հոկտեմբեր պահում են դրսում, այնուհետև՝ ծածկի տակ: *Պ. Սեռոբյան*

**ՄԵՐՁԱՐԿՏԻԿԱԿԱՆ ԳՈՏԻ**, աշխարհագրական գոտի Հյուսիսային կիսագնդում, արկտիկական և բարեխառն գոտիների միջև: Հվ. սահմանը օվկիանոսում անցնում է սառույցների սեզոնային տարածման սահմանով: Կլիման ցուրտ է: Ամենատաք ամսվա միջին ջերմաստիճանը 5°—10°C է, ցուրտ ամսվանը՝ —5°C-ից մինչև —30°C, —40°C (երբեմն՝ —50°C):

Ամռանը գերակշռում են արմ. բարեխառն օդային հոսանքները և ցիկլոնային ինտենսիվ գործունեությունը, ձմռանը՝ արկտիկական օդային հոսանքները և մթնոլորտի անտիցիկլոնային վիճակը: Տեղումները (տարեկան՝ 300—500 *մմ*) գլխավորապես թափվում են պինդ վիճակում, որոնց քանակը գերակշռում է գոլորշիացմանը: Ձնածածկույթը պահպանվում է ավելի քան 8 ամիս: Կա գրունտների խոր սառածություն: Միկրո- և մեզոռելիեֆում գերակշռում են հիդրոլակոլիթները՝ կապված սոլիֆլյուկցիայի հետ: Մ. գ-ում առանձնացվում են տունդրայի և անտառատունդրայի զոնաներ: Հյուսիսային Ամերիկայում և Եվրասիայում առանձնացվում են երկուական մերձօվկիանոսային և մեկական ցամաքային սեկտորներ (տես նաև *Կլիմայական գոտիներ*):

**ՄԵՐՁԲԱԼԹՅԱՆ ԵՐԿՐԱՄԱՍ** (Օստզեե երկրամաս), Կուռլանդական, Լիֆլանդական և Էստլանդական նահանգների (Էստոնական ՍՍՀ ներկայիս տերիտորիան և Լատվիական ՍՍՀ տերիտորիայի մեծ մասը) ընդհանուր անվանումը Ռուսական կայսրությունում: 1801—76-ը եղել է գեներալ-նահանգապետություն Ռիգա կենտրոնով:




**ՄԵՐՁԲԱԼԹՅԱՆ ՕՊԵՐԱՑԻԱ 1944,** Հայրենական մեծ պատերազմի ժամանակ (1941—45) 1-ին, 2-րդ, 3-րդ Մերձբալթյան և Լենինգրադյան ռազմաճակատների ու Բալթիական նավատորմի ստրատեգիական հարձակողական գործողությունները սեպտեմբեր—հոկտեմբերին, Սովետական Մերձբալթիկան գերմանա-ֆաշիստական զորքերից ազատագրելու համար: Մ. օ-ի մեջ մտնում էին Ռիգայի, Տալլինի, Մոոնզունդյան, Մեմելի օժանդակ օպերացիաները: 1944-ի ամռանը սովետական զորքերը ազատագրել էին Էստոնական ՍՍՀ մի փոքր և Լիտվական ՍՍՀ ու Լատվիական ՍՍՀ զգալի տարածքներ: Մերձբալթիկայում գերմանացիներն ունեին մեծ թվով ուժեր (56 դիվիզիա և 3 բրիգադ, ավելի քան 700 հզ. զինվոր, 1200 տանկ և գրոհող հրետանի, 400 մարտական ինքնաթիռ ևն) և ամուր պաշտպանություն:

Գերագույն գլխավոր հրամանատարության ծրագիրն էր Ռիգայի ուղղությամբ Մերձբալթյան բոլոր ռազմաճակատների, և Տալլինի ուղղությամբ Բալթիական նավատորմի ու Լենինգրադյան ռազմաճակատի միացյալ գործողություններով մասնատել թշնամու ուժերը, շրջապատել ու ոչնչացնել նրա խմբավորումները և լրիվին ազատագրել Մերձբալթիկան: Ծրագիրն իրագործելու համար տրամադրըվում էր 900 հզ. զինվոր, մոտ 7500 հրանոթ, 3000 տանկ և ինքնագնաց հրանոթ, 2500 ինքնաթիռ: Օպերացիաների ընդհանուր ղեկավարությունն իրականացնելու էր Սովետական Միության մարշալ Ա. Վասիլևսկին:

Սեպտ. 14-ին Մերձբալթյան ռազմաճակատների զորքերը (3-րդը՝ բանակի գեն. Ի. Մասլեննիկովի, 2-րդը՝ բանակի գեն. Ա. Երյոմենկոյի, 1-ինը՝ բանակի գեն. Հ. Բաղրամյանի հրամանատարությամբ) սկսեցին Ռիգայի հարձակողական օպերացիան: 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի զորքերը, հաջողությամբ ճեղքելով թշնամու պաշտպանությունը, արագությամբ առաջացան մինչև 50 *կմ*: Ռիգայից հվ., իրենց զորքերի վիճակը թեթևացնելու նպատակով գերմանացիները ձեռնարկեցին երկու հակահարձակում (Դոբելեից հվ-արմ. և Բալդոնեից հս-արմ.), սակայն՝ անհաջող: Սեպտ. 17-ին Լենինգրադյան ռազմաճակատի զորքերը (հրամանատար՝ Սովետական Միության մարշալ Լ. Գովորով) սկսեցին Տալլինի օպերացիան և սեպտ. 22-ին ազատագրեցին քաղաքը: Թշնամու պաշտպանությունը կարողացան հաղթահարել նաև 2-րդ և 3-րդ Մերձբալթյան ռազմաճակատների զորքերը: Արդեն սեպտ. 26-ին Լենինգրադյան ռազմաճակատի զորքերը ազատագրեցին Էստոնիայի ամբողջ տարածքը, բացառությամբ Մոոնզունդյան կղզիների: Ստրատեգիական այս փուլում սովետական զորքերը չկարողացան կտրել թշնամու «Հյուսիս» բանակախումբը Արևելյան Պրուսիայից: Թշնամին կարողացավ Ռիգայի շրջանում կենտրոնացնել խոշոր խմբավորում (ավելի քան 30 դիվիզիա), Մեմելի ուղղությամբ ուներ 8 դիվիզիա, որոնք սեպտ. 21-ին մտան «Հյուսիս» բանակախմբի մեջ:

Ելնելով ստեղծված իրավիճակից՝ սովետական գերագույն հրամանատարությունը որոշեց փոխել գլխավոր հարվածի

ուղղությունը Մեմելի ուղղությամբ՝ նպատակ ունենալով կտրել «Հյուսիս» բանակախումբը և մաս-մաս ջախջախել այն: Մերձբալթյան բոլոր ռազմաճակատները վերախմբավորվեցին (1-ինը՝ Շաուլյայի, մյուսները՝ Ռիգայի ուղղությամբ) հարձակումը վերսկսելու համար:

Հոկտ. 5-ին 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի զորքերը, 3-րդ Բելոռուսական ռազմաճակատի 39-րդ բանակի աջակցությամբ, սկսեցին Մեմելի օպերացիան և արդեն հոկտ. 10-ին ճեղքելով հակառակորդի պաշտպանությունը, դուրս եկան Բալթիկի ծովափ և շրջափակեցին քաղաքնավահանգիստը ցամաքից: Մեկ ուրիշ զորախումբ դուրս եկավ Արևելյան Պրուսիայի սահմանը, Տաուրագեի մոտ, 3-րդ Բելոռուսական ռազմաճակատի 29-րդ բանակը հակառակորդին շպրտեց Նեմանից այն կողմ: Խափանվեց «Հյուսիս» բանակախումբը Արևելյան Պրուսիա տեղափոխելու գերմ. ծրագիրը, այն կտրվեց «Կենտրոն» բանակախմբից և ստիպված սկսեց նահանջել Ռիգայից դեպի Կուռլանդական թերակղզի: 2-րդ և 3-րդ Մերձբալթյան ռազմաճակատների զորքերը հոկտ. 5—6-ին վերսկսեցին հարձակումը Ռիգայի վրա: Հետապնդելով նահանջող թշնամուն՝ դուրս եկան պաշտպանական գիծ և հոկտ. 12-ին սկսեցին մարտերը քաղաքի համար: Հոկտ. 13—15-ին նրանք ազատագրեցին քաղաքը: Հոկտ. 16-ին 3-րդ Մերձբալթյան ռազմաճակատը կազմացրվեց, իսկ 1-ին և 2-րդ Մերձբալթյան ռազմաճակատների զորքերը շարունակեցին հարձակումը և հոկտ. 31-ին դուրս եկան Կեմերի, Լեցկավայի, Լիեպայայի սահմանագիծ: Սեպտ. 27—հոկտ. 10-ի ընթացքում Լենինգրադյան ռազմաճակատի զորքերը Բալթիական նավատորմի օժանդակությամբ իրականացրին Մոոնզունդյան օպերացիայի (1944) հիմնական մասը:

Մերձբալթիկայի ազատագրմանը մասնակցեցին 8-րդ Էստոնական, 130-րդ Լատվիական հրաձգային կորպուսները և 16-րդ Լիտվական հրաձգային դիվիզիան: Մ. օ-ով ազատագրվեցին Լիտվան, Լատվիան, Էստոնիան: Ջախջախվեց թշնամու «Հյուսիս» բանակախմբի 26 դիվիզիա և ամբողջովին ոչնչացվեց երեքը: Այդ խմբավորման հիմնական ուժերը (27 դիվիզիա և 1 բրիգադ) սեղմվեցին Կուռլանդական թերակղզում դեպի ծով և կորցրին ստրատեգիական նշանակությունը: Շրջապատված կուռլանդական խմբավորումը կապիտուլացվեց 1945-ի մայիսի 8-ին:

Մերձբալթիկայի համար մղված մարտերին մասնակցեցին նաև հայ ժողովրդի հազարավոր զավակներ: Ռազմ. գործողությունները ղեկավարեցին բանակի գեն. Հ. Բաղրամյանը, գեն.-լեյտենանտներ Ա. Բունիաթյանը (1-ին Մերձբալթյան ռազմաճակատի սանիտարական վարչության պետ), Բ. Առուշանյանը (բանակի հրամանատարի տեղակալ, հետագայում՝ կորպուսի հրամանատար), Ս. Գինոսյանը (բանակի շտաբի պետ), գեն.-մայորներ Հ. Բաբայանը (դիվիզիայի հրամանատար), Ս. Կարապետյանը (դիվիզիայի հրամանատար), Ա. Ղազարյանը (դիվիզիայի հրամանատար), Ս. Կազբինցևը (ռազմաճակատի քաղվարչության պետ), Կ. Հախնազարյանը (կորպուսի հրետանու հրամանատար), գնդապետներ Ս. Դանիելյանը (դիվիզիայի հրամանատար), Հ. Սաֆարյանը (կորպուսի հրետանու հրամանատար) և ուրիշներ:

Ցուցաբերած արիության և խիզախության համար մեծ թվով հայ ռազմիկներ պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով: Սովետական Միության հերոսի կոչման արժանացան Ն. Ստեփանյանը (երկրորդ անգամ), սերժանտ Վ. Վանցյանը, լեյտենանտ Մ. Նագուլյանը, գվարդիայի ավագ Հ. Սնոպլյանը և Լ. Չափչախովը (Չափչախյան): Շարքայիններ Գևորգ Իսրայելյանը, Նարիբեկ Ավետիսյանը, Խաչիկ Մելիքսեթյանը, Ստեփան Ստեփանյանը, Ռուբեն Պապոյանը դարձան Փառքի շքանշանների լրիվ ասպետներ: Ռազմ. գործողություններին մասնակցեց նաև Կ. Վորոշիլովի անվ. հայկ. նախկին 76-րդ լեռնահրաձգային դիվիզիան (Ստալինգրադի ճակատամարտից հետո վերանվանվել էր 51-րդ գվարդիական դիվիզիա), ինչպես նաև սփյուռքահայության միջոցներով կառուցված «Սասունցի Դավիթ» տանկային շարասյունը:

*Գրկ.* Борьба за Советскую Прибалтику в Великой Отечественной войне 1941—1945, т. 2, Рига, 1967. *Հ. Բաղրամյան*

**ՄԵՐՁԴՆԵՊՐՅԱՆ ԴԱՇՏԱՎԱՅՐ**, Դնեպրյան դաշտավայր, գտնվում է Ուկրաինական ՍՍՀ-ում, Դնեպրի ձախ ափին: Սահմանափակվում է Միջին Ռուսական և Մերձդնեպրյան բարձրություններով: Բարձրությունը 50—160 *մ* է, առավելագույնը՝ 200 *մ*, լայնությունը՝ մինչև 120 *կմ*: Կազմված է ֆլյուվիոգլյացիալ և ալյուվիալ-լճային ավազներից, ավազակավերից, լյոսերից: Մեծ մասը հերկված է: Զարգացած է գյուղատնտեսությունը:

**ՄԵՐՁԿԱՍՊՅԱՆ ԴԱՇՏԱՎԱՅՐ**, գտնվում է Կասպից ծովի հյուսիսային ափին: Տարածությունը մոտ 200 հզ. *կմ²* է: Մակերևույթը դեպի ծովը թեքված, առանձին բարձրություններով (մինչև 149 *մ*) հարթավայր է: Հվ. մասը օվկիանոսի մակարդակից ցածր է 28 *մ*: Ընդգրկում է Վոլգայի, Թերեքի, Սուլակի դելտաները, Ուրալի և Էմբայի ստորին հոսանքները: Կան ոչ մեծ բարձրացումներ՝ աղային գմբեթներ: Ռելիեֆի բնորոշ ձևերից են Բերովյան թմբերը: Կլիման չոր է, ցամաքային: Հունվարի միջին ջերմաստիճանը —14°C-ից՝ հս-ում, մինչև —8°C է Կասպից ծովի ափերին, հուլիսինը՝ 22—24°C, տարեկան տեղումները՝ մինչև 200 *մմ*: Տիրապետում են անապատային և կիսաանապատային լանդշաֆտները: Հողահանդակներում գերակշռում են արոտավայրերը: Վոլգա-Ախտուբայի ողողատում զարգացած է բանջարաբոստանային կուլտուրաների մշակությունը, այգեգործությունը: Այստեղ է Ուրալ-Էմբայի նավթաբեր շրջանը: Էլտոն և Բասկունչակ լճերում կա աղ:

**ՄԵՐՁՀԱՍԱՐԱԿԱԾԱՅԻՆ ԳՈՏԻՆԵՐ**, բնական աշխարհագրական գոտիներ Հյուսիսային և Հարավային կիսագնդերում: Տարածվում են հասարակածային և արևադարձային գոտիների միջև: Ամռանը գերակշռում են հասարակածային, ձմռանը՝ արևադարձային (պասսատներ) օդային զանգվածները: Կլիման հասարակածային մուսսոնային է, չոր և խոնավ սեզոնների պարզ արտահայտված հերթափոխով: Օդի միջին ամսական ջերմաստիճանը 15—32°C է, տարեկան տեղումները՝ 250—2000 *մմ*, որի 90—95%-ը թափվում է խոնավ եղանակին: Լանդշաֆտների հերթափոխն ունի միջօրեական ուղղություն, լեռներում ուղղաձիգ գոտիականություն է: Հողերը լատերիտային են՝ պոդզոլացված լատերիտներից մինչև գորշ կարմրավուն սավաննայինը: Կենդանական աշխարհին բնորոշ են երկկճղակավորները, գիշատիչները, կրծողները և թերմիտները: Օվկիանոսում գոտու սահմանը որոշվում է հյուսիսային պասսատով: Ջրի միջին ջերմաստիճանը 25°C է, դեպի հասարակած աղիությունը նվազում է մինչև 37‰: Ուղղաձիգ հոսանքների միախառնման թուլությամբ է պայմանավորվում ջրում թթվածնի պակասը և պլանկտոնի աղքատությունը: Բնական լանդշաֆտը մարդու կողմից խիստ փոփոխված է:

**ՄԵՐՁՄՈՍԿՈՎՅԱՆ ԱԾԽԱՅԻՆ ԱՎԱԶԱՆ**, զբաղեցնում է Լենինգրադի, Նովգորոդի, Կալինինի, Սմոլենսկի, Մոսկվայի, Կալուգայի, Տուլայի և Ռյազանի մարզերի տարածքի մի մասը: Հանույթը հիմնականում կենտրոնացված է Տուլայի մարզում: Ածխաբեր նստվածքների մակերեսը (մինչև 200 *մ* խորությունը) հասնում է մոտ 120 հզ. *կմ²*, աղեղնաձև գոտու լայնությունը՝ 80—100 *կմ*: Ածուխների ընդհանուր պաշարը՝ 11,8 մլրդ *տ*, որից հետախուզված է 5,3 մլրդ *տ*: Հանքավայրերը հայտնաբերված են 1772-ին, սիստեմատիկ հանույթը սկսվել է 1855-ին: Մ. ա. ա. գտնըվում է Արևելա-Եվրոպական պլատֆորմի Մոսկովյան սինեկլիզի հվ. և արմ. մասերում: Ստորին կարբոնի հասակի ածխաբեր ավազա-կավային հաստվածքն ունի մոտ 50 *մ* հզորություն: Այն պարունակում է ածուխների մինչև 14 շերտ, որոնցից շահագործվում է սովորաբար մեկը, սակայն՝ երկուսը՝ 1,5—3,0 *մ* հզորությամբ: Ածուխները գորշ են, մեծ մասամբ հումուսային, բարձր մոխրայնությամբ և ծծմբի զգալի պարունակությամբ: Այրվող զանգվածի ջերմությունը 28,2 *Մջ/կգ* (6750 *կկալ/կգ*) է: Հանքավայրերը շահագործվում են գլխավորապես ստորգետնյա եղանակով (ածուխների տարեկան արդյունահանման մոտ 90%): Ածուխներն օգտագործվում են ՍՍՀՄ եվրոպական մասի կենտրոնական մարզերի խոշոր ՊՇԷԿ-ներում և ՋԷԿ-երում (Կաշիրայի, Շչեկինի ևն), ցեմենտի, քիմ., մեքենաշինական արդյունաբերության մեջ և կենցաղային կարիքների համար: Բացի ածխից, Մ. ա. ա-ում արդյունահանվում են քարաղ, գիպս, հրակայուն կավեր, բոքսիտներ, երկաթի հանքաքար, ֆոսֆորիտներ, շինարարական ավազ:

**ՄԵՐՁՍԵՎԾՈՎՅԱՆ ԴԱՇՏԱՎԱՅՐ**, տափարակ, Սև և Ազովի ծովերին հարող, դեպի հարավ թույլ թեքությամբ հարթավայր Դանուբի դելտայի և Կալմիուս գետի միջև: Բարձրությունը 0—150 *մ* է: Կազմված է պալեոգենի և նեոգենի ծովային նստվածքներից՝ ծածկված լյոսերով ու լյոսանման ավազակավերով: Կտրտված է

Դնեպրի, Հարավային Բուգի, Դնեստրի և այլ գետերի հովիտներով: Ափագիծը զառիթափ է, հաճախ՝ սողանքներով: Շատ են լիմաններն (Դնեպրի, Դնեստրի են) ու ավազալեզվակները: Գերակշռում են հվ. սևահողերով ու մուգ շագանակագույն հողերով տափաստանային լանդշաֆտները:

**ՄԵՐՁԿՈԼԳՅԱՆ ԲԱՐՁՐՈՒԹՅՈՒՆ**, գտնըվում է Վոլգայի աջ ափին, Գորկուց մինչև Վոլգոգրադ: Բարձրությունը մինչև 375 *մ* է (Ժիգուլներ): Կազմված է մեզոզոյի և պալեոգենի ավազներից, կավերից, մերգելներից, կավճից, տեղ-տեղ՝ պալեոզոյի կրաքարերից և դոլոմիտներից: Արլ. և հս. լանջերը զառիթափ են, արմ. լանջը՝ զառիկող: Գերակշռում են էրոզիոն ռելիեֆը, Վոլգայի ափին՝ սողանքները: Մի շարք վայրերում զարգացած է կարստը: Լանդշաֆտը անտառատափաստանային և տափաստանային է: Տարածքը հերկված է: Օգտակար հանածոներից կան նավթ, այրվող գազեր, թերթաքարեր, ֆոսֆորիտներ, հանքային շինանյութեր:

**ՄԵՐՃՈՒՄԻԿ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Խարբերդի վիլայեթի Չարսանճագի գավառում: 1914-ին ուներ 9 տուն հայ և 4 տուն ասորի բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Կար եկեղեցի (Ս. Հովհաննես): Մ-ի հայերը տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանցից շատերը զոհվել են բռնագաղթի ճանապարհին:

**ՄԵՐՈՄՈՐՖ ՖՈՒՆԿՑԻԱՆԵՐ** (< հուն. μέρος — մաս, կտորակ և μορφή— ձև, տեսք), ֆունկցիաներ, որոնք տրված G տիրույթում (մասնավորաբար վերջավոր կոմպլեքս հարթության մեջ) կարող են ներկայացվել երկու միարժեք անալիտիկ (ամբողջ) ֆունկցիաների հարաբերության տեսքով: Մ. ֆ. կարող են սահմանվել նաև որպես տիրույթում բևեռներից բացի այլ եզակի կետեր չունեցող անալիտիկ ֆունկցիաներ: Մ. ֆ. են էյլերի ֆունկցիան, ռացիոնալ ֆունկցիաները, եռանկյունաչափական ֆունկցիաները են:

Հայ մաթեմատիկոսները վերջին տասնամյակների ընթացքում մի շարք կարևոր արդյունքներ են ստացել Մ. ֆ-ի տեսության բնագավառում:

**ՄԵՐՈՍԼԱՎՍԿԻ** (Mieroslavski) Լյուդվիկ (1814—1878), լեհ քաղաքական գործիչ: Մասնակցել է 1830—31-ի Լեհական ապստամբությանը, տարագրվել Ֆրանսիա: 1845-ին ուղարկվել է Պոզնան՝ լեհ. ազատագրական ապստամբություն կազմակերպելու, բայց ձերբակալվել է պրուս. իշխանությունների կողմից և դատապարտվել մահապատժի, որը փոխարինվել է ցմահ բանտարկությամբ: Ազատվել է 1848-ին Գերմանիայում սկսված հեղափոխության հետևանքով: 1848-ի մարտ—մայիսին Պոզնանի իշխանությունում ղեկավարել է լեհ. ազգային ջոկատները, որոնց զինաթափումից հետո արտաքսվել է Ֆրանսիա: 1850—60-ական թթ. կապ է հաստատել բոնապարտիստների հետ: Ձգտել է իրեն ենթարկել Լեհաստանում հասունացող հեղափոխական շարժման ղեկավարությունը, դեմ էր ռուս-լեհ. հեղափոխական դաշինքին: 1863—64-ի լեհ. ապստամբության սկզբին հռչակվել է դիկտատոր, 1863-ի փետրվարին պարտվել է ցարական զորքերից և նորից վտարանդվել:

**ՄԵՐՈՎԻՆԳՅԱՆ ԱՐՎԵՍՏ**, V—VIII դարերում *Մերովինգների* պետության մեջ միավորված Ֆրանսիայի մի շարք մարզերի (հիմնականում հս. և կենտրոնական) արվեստի պայմանական անվանումը: Մ. ա. հետևել է ուշ գոթական և գալլահռոմեական, ինչպես և բարբարոսների արվեստի ավանդույթներին: Այդ շրջանի ճարտ-ը (տիպական են մկրտարանները, կրիպտեները, բազիլիկ եկեղեցիները), չնայած շինարարական տեխնիկայի ընդհանուր անկմանը, հող է նախապատրաստել «Կարոլինգյան վերածննդի» շրջանի մինչռոմանական շինարվեստի ծաղկման համար (տես *Կարոլինգյան արվեստ*):



Սեն Էբրեգեզիլ կրիպտեն Ժուարում (VII—VIII դդ.)

Բարձր զարգացման է հասել դեկորատիվ-կիրառական արվեստը (սարկոֆագների հարթաքանդակներ): Գրքարվեստում հիմնական ուշադրությունը դարձվել է գլխատառերի և անվանաթերթերի մանրանկարներին, առանձին պատկերային մոտիվներ լուծված են զարդագրերի սկզբունքով, վառ, պարզ գունահարաբերումներով:

**ՄԵՐՈՎԻՆԳՆԵՐ** (Mérovingiens), առաջին թագավորական դինաստիան Ֆրանկական պետությունում: Ավանդական տոհմահայրը Մերովեն է (Merovaeus): Մ-ի օրոք Ֆրանկ. պետությունում սկզբնավորվում են ֆեոդալական հարաբերությունները: Մ. տիրել են մինչև 751-ը:

Մ-ի գլխավոր ներկայացուցիչներն են. Խլոդվիգ I (կառավարել է 457—481-ին), դինաստիայի փաստական հիմնադիրը, Խլոդվիգ I (կառավարել է 481—511-ին), Խիլպերիկ I (կառավարել է 561—584-ին, ֆրանկ. հողերի մի մասում՝ Սուասոն կենտրոնով), Սիգեբերտ I (կառավարել է 561—575-ին, Ավստրազիայում), Կլոտար II (584—629, մինչև 613-ը՝ Նեյստրիայում), Դագոբերտ I (629—639), Խիլդերիկ III (743—751), որին տապալեց *Պիպին Կարճահասակը*:

**ՄԵՐՋԱՆԻ ԼԵՌՆԵՐ**, Ներքին Տավրոսի կենտրոնական հատվածը Հայկական բարձրավանդակի արևմտյան մասում: Երկարությունը մոտ 50 *կմ* է, բարձրությունը՝ մինչև 3449 *մ* (Մերջան լեռ): Ձգվում է մերձլայնական ուղղությամբ, Բոլորմոր լեռնանցքից մինչև Մնձուր գետի հովիտը: Ծալքաբեկորային լեռնաշղթա է՝ կազմված յուրայի նստվածքային և հրաբխածին ապարներից: Հս. լանջերը կարճ են և զառիթափ, հվ՝. երկար: Կլիման բարեխառն է՝ վերընթաց գոտիական տարբերություններով, հս. լանջերի ավելի մեծ խոնավությամբ: Լեռնաանտառային դարչնագույն, մասամբ գորշ հողերում աճում են լայնատերև անտառներ, 2200—2400 *մ* վեր՝ թփուտներ, ենթալպյան և ալպյան մարգագետիններ:

**ՄԵՐՍԵՐՈՒՄ** [անգլ. գյուտարար Ջ. Մերսերի (J. Mercer, 1791—1866) անունով], հիմքերի խիտ լուծույթներով բամբակե գործվածքների կամ թաղանթանյութերի (մանվածք, թելք) մշակում (սովորաբար 15—18°C-ում): Մ. կայուն փայլ է տալիս նյութին և բարձրացնում նրա որակը (հիգրոսկոպությունը, ամրությունը, ներկվելու ունակությունը): Պրոցեսը կատարվում է Մ-ման մեքենաների օգնությամբ, որոնց վրա նյութը ներծծվում է նատրիումի հիդրօքսիդով, քամվում և լվացվում:

**ՄԵՐՍԻԵ** (Mercier) Շառլ (1904, Լիոն — 23.4.1978, Փարիզ), ֆրանսիացի արևելագետ-հայագետ: Աշակերտել է Լ. *Մարիեսին*: 1940—41-ին դասավանդել է Հալեպի հայկ. կոլեջում: 1941-ին, վերադառնալով Փարիզ, շարունակել է հայերենի ու վրացերենի ուսումնասիրությունը: 1946—77-ին ընդմիջումներով վարել է Փարիզի Արևելյան հին լեզուների դպրոցի հայկ. և վրաց. ամբիոնները: 1948-ին, իր ուսուցիչների հետ, ֆրանս. է թարգմանել և հրատարակել Ներսես Լամբրոնացու «Եկեղեցական ժողովո ճառք»-ը, 1953-ին՝ «Իսահակի, Հակոբի և Մովսեսի օրհնությունների մեկնությունը» (հուն., հայկ. և վրաց. տեքստերը), 1960-ին՝ Եզնիկ Կողբացու «Հաղագս Աստուծո» («Եղծ աղանդոց») երկը (քննական թարգմանություն, որի վրա Լ. Մարիեսը աշխատել է մոտ 10 տարի): Լատ. է թարգմանել նաև Ս. Եփրեմի հիմները («Հայերենում պահպանված Ս. Եփրեմի հիմները», 1962), որոնց հուն. բնագիրը չի պահպանվել: Մ. 1972-ին այցելել է Հայաստան, 1974-ին՝ Վրաստան: *Խ. Կարաղեկյան*

**ՄԵՐՍԻՆ**, քաղաք Միջերկրական ծովի ափին, նախկին Ադանայի վիլայեթում (Կիլիկիա): Ունի ավելի քան 114 հզ. բն. (1978): Նավահանգիստ է Մերսինի ծոցում: 1914-ին ուներ 12 հզ. բն., որից 2500-ը՝ հայ: Հայերը հիմնականում զբաղվում էին արհեստներով և առևտրով: Ունեին երկու եկեղեցի, զույգ դպրոց (արական, իգական) և մանկապարտեզ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է բռնագաղթի ճանապարհին:

**ՄԵՐՍԱԺ**, մ ա ս ա ժ (ֆրանս. massage), բուժման մեթոդ. իրականացվում է մարդու մարմնի մակերևույթին և օրգաններին ձեռքով կամ հատուկ սարքերով մեխանիկական և ռեֆլեկտոր զգիռներ հաղորդելով: Կիրառվել է Չինաստանում (մ. թ. ա. 2-րդ հազարամյակ), Հնդկաստանում, Հին Հունաստանում, Եգիպտոսում և Հռոմում: Մ. գրգռում է մաշկի, մկանների, հոդերի, անոթների պատերի նյարդային վերջույթները, կենտրոնական նյարդային համակարգը և ներքին օրգանները, նըպաստում մաշկի անոթների լայնացմանը, արյան շրջանառության արագացմանը, բարելավում է հյուսվածքների սնուցումը, ուժեղացնում քրտնագեղձերի արտազատական ֆունկցիան: Մ. մեծացնում է կա-

պանային ապարատի առաձգականությունը և շարժունությունը, լավացնում մարդու ինքնազգացումը: Հ ա կ ա ց ու ց ու մ ն ե ր ը. սուր բորբոքային պրոցեսներ, չարորակ ուռուցքներ, արյան և ավշային անոթների հիվանդություններ: Մ-ման հիմնական ձևերն են՝ շոյում, տրորում, ճըմլում, թակում, թրթռում: Մ. լինում է մարզական, բուժական, հիգիենային: ՀՍՍՀ-ում Մ. լայն տարածում ունի մանկաբուժական պրակտիկայում. պոլիկլինիկաներում (մինչև մեկ տարեկան երեխաների համար) և մանկական առողջարաններում: Մ-ման հատուկ ձև է ս ր ր տ ի Մ., որը մարդու *վերակենդանացման* մեթոդներից է, կիրառվում է սրտի աշխատանքի դադարի դեպքում: Կատարվում է հիվանդին առաջին օգնություն ցույց տալու ժամանակ՝ առանց կրծքավանդակը բացելու (սրտի անուղղակի կամ փակ Մ.) կամ սրտի անմիջական ռիթմիկ սեղմումներով՝ կրծքավանդակի բացմամբ ընթացող վիրահատությունների դեպքում (սրտի ուղղակի կամ բաց Մ.):

**ՄԵՐՎ**, Միջին Ասիայի հնագույն քաղաքներից: Գտնվել է Մուրգաբ գետի ափին (ներկայիս Թուրքմեն. ՍՍՀ Բայրամ Ալի քաղաքի մոտ): Մ-ի ավերակներն ուսումնասիրվում են XIX դ. 80-ական թթ. (1946-ից պեղում է սովետական հնագետ Մ. *Մասոնի* հնագիտ. արշավախումբը): Մ-ի հնագույն մասը՝ Էրկ Կալան, գոյություն է ունեցել մ. թ. ա. 1-ին հազարամյակի կեսից: Մ. բարգավաճել է մ. թ. ա. II դ.—մ. թ. III դ., ունեցել է մոտ 60 *կմ²* տարածք, եռամաս կառուցվածք՝ միջնաբերդ (Էրկ Կալա), բուն քաղաք (այժմյան՝ Գյաուր Կալա) և արվարձան (բոլորն էլ՝ պարսպապատ): III դարից Մ. եղել է Սասանյանների պետության կազմում, իսկ VII դ. նվաճել են արաբները: Այս շրջանում Գյաուր Կալայում կառուցվել են բուդդայական և քրիստոնեական մենաստաններ, ֆեոդալների դղյակներ: Մ. առավել ծաղկման է հասել XI դ.—XIII դ. 1-ին կեսին, երբ դարձել է սելջուկների մայրաքաղաքը: XII դ. վերջին—XIII դ. սկզբին Խորեզմշահերի պետության խոշոր կենտրոն էր: 1222-ին Մ. ավերել են մոնղոլները: Դրանից հետո քաղաքը մասնակիորեն վերածնվել է, բայց այլևս նշանակալի դեր չի խաղացել: 1520—24-ին և 1601—1747-ին գտնվել է պարսիկների իշխանության ներքո, XIX դ. վերջնականապես անկում է ապրել:

**ՄԵՐՏՈՆ** (Merton) Ռոբերտ Քինգ (ծն. 1910), ամերիկյան «ակադեմիական» սոցիոլոգիայի ներկայացուցիչ: Կոլումբիայի համալսարանի պրոֆեսոր (1947): Քննադատելով արդի բուրժ. սոցիոլոգիայում էմպիրիկի և տեսականի խզումը՝ Մ. առաջ քաշեց «միջին մակարդակի տեսությունների» գաղափարը, որը պետք է կամրջի փորձնական տվյալները և ընդհանուր (բարձրագույն) տեսությունը: Մ. ղեկավարվել է կառուցվածքային-ֆունկցիոնալ վերլուծության մեթոդով, միաժամանակ քննադատել դրա ծայրահեղությունները (մասնավորապես, անձնավորության ֆունկցիոնալ ներդրման շնորհիվ, հասարակության ինտեգրացման և հավասարակշռության ձգտելու մասին դրույթը): Այս առումով «շեղված» վարքագիծը՝ սոցիալ անոմիան բացատրելիս ներմուծում է բացահայտ և ոչ բացահայտ ֆունկցիաներ, ինչպես նաև «դիսֆունկցիա» հասկացությունները՝ հասարակական կառուցվածքի խախտված համամասնությունը նշելու համար: Մ. առաջարկում է ուսումնասիրել այդ խոտորումները և սոցիալ-հոգեբանական միջոցառումներով պայքարել դրանց դեմ: Մ. հետազոտել է նաև գիտության, ճանաչողության, զանգվածային հաղորդակցության սոցիոլոգիական հարցերը:

*Երկ.* Social Theory and Social Structure, N. Y., 1968; Contemporary Social Problems, ed. with R. Nisbet, 3 ed., N. Y., 1971.

*Գրկ.* Андреева Г. М., Современная буржуазная эмпирическая социология, М., 1965; Loomis Ch. P., Loomis Z. K., Modern Social Theories, N. Y., 1961 (ռուսե մատենագիտություն): *Ա. Աղիբեկյան*

**ՄԵՐՈՒԺԱՆ ԱՐԾՐՈՒՆԻ**, Մ ե ր ու ժ ա ն Ա ր ծ ր ու ն ի (ծն. թ. անհտ.—371), նախարար, Արծրունյաց տոհմի նահապետ: 359-ին վերսկսված պարսկա-հռոմեական պատերազմների ժամանակ լքել է Հայոց թագավոր *Արշակ Բ*-ին և գլխավորել է պարսկ. կողմնորոշում ունեցող հայ նախարարների խմբավորումը՝ գործակցելով Սասանյան Շապուհ II արքային (որի քույր Որմիզդուխտին կնության էր առել): Մ. Ա-ու մերձավոր կուսակիցն էր *Վահան Մամիկոնյանը*, որը նրա քրոջ ամուսինն էր: Պարսկ. զորքերը Մ. Ա-ու առաջնորդությամբ ներխուժել են Հայաստան, գրավել Տիգրանակերտ քաղաքը, ասպատակել Աղձն (Արզն), Անգեղ-տուն, Բարձր Հայքի Մընձուր, Դարանաղի գավառները, Ծոփք նահանգը: Դարանաղիում պարսից զորքը Մ. Ա-ու օգնությամբ գրավել է Անի ամրոցը: Մ. Ա-ու և նրա գլխավորած նախարարների դերն ավելի է մեծացել հատկապես 363-ի պարսկա-հռոմեական պայմանագրից հետո, երբ Հռոմը հրաժարվել է օգնել հայերին: Նա եռանդուն պայքար է տարել Հռոմի կողմը հակված ուժերի և, առաջին հերթին, Հայոց եկեղեցու դեմ՝ ձգտելով Սասանյանների օգնությամբ պահպանել Հայոց թագավորությունը և վերականգնել Հայաստանում նախաքրիստոնեական (հեթանոսական) կրոնը՝ զրադաշտականության ձևով: Ըստ Մովսես Խորենացու, Ձիրավի ճակատամարտում պարսկ. զորքի պարտությունից հետո Կոգովիտ գավառում Մ. Ա. ձերբակալվել և մահապատժի է ենթարկվել Սմբատ Բագրատունու ձեռքով:

*Գրկ.* Փ ա վ ս տ ո ս Բ ու զ ա ն դ, Պատմություն Հայոց, Ե., 1968: Մ ո վ ս ե ս Խ ո ր ե ն ա ց ի, Պատմություն Հայոց, Ե., 1968: Մ ա ն ա ն դ յ ա ն Հ., Երկ., հ. 2, Ե., 1978: *Վ. Վարդանյան*

**ՄԵՑՑՈ-ՍՈՊՐԱՆՈ** (իտալ. mezzosoprano, < mezzo — միջին), կանացի երգչական ձայն, *սոպրանոյի* և *կոնտրալտոյի* նկատմամբ միջին դիրքում: Տարբերակում են բարձր (քնարական) Մ-ս. (մոտ է սոպրանոյին) և ցածր (մոտենում է կոնտրալտոյին): Մ-ս-ի համար գրված օպերային դերերգերից են՝ Ամներիս (Վերդիի «Աիդա»), Կարմեն (Բիզեի «Կարմեն»), Մարֆա (Մուսորգսկու «Խովանշչինա»), Լյուբաշա (Ռիմսկի-Կորսակովի «Թագավորի հարսնացուն»), Ալմաստ (Սպենդիարյանի «Ալմաստ»), Փառանձեմ (Չուխաջյանի «Արշակ Բ») են: Տարատեսակներից է կոլորատուրային Մ-ս.:

**ՄԵՑՑՈ-ՏԻՆՏՈ** (< իտալ. mezzo — միջին և tinto — գունավորված, երանգավորված), մետաղի վրա փորագրության տեսակ, որն անվանվում է խորը տպագրությանը: Մ-տ-ի փորագրանկարի տպակաղապարը պատրաստելիս թիթեղի ողորկ մակերեսը մեխ. կամ քիմ. եղանակով դարձվում է հատիկավոր: Տպագրելիս այդօրինակ թիթեղից ստացվում է միահավասար սև երանգ: Հատիկավորված թիթեղի վրա (մաքուր կամ ներկապատ) ասեղով կամ մատիտով գծվում է պատկերը, նախատեսված լուսավոր մասերը հարթեցվում են կամ քերելով կոկվում՝ ստեղծելով ստվերից դեպի լույս աստիճանական անցումներ: Մ-տ. տեխնիկայով կատարված փորագրանկարներն առանձնանում են երանգների խորությամբ ու թավշակերպությամբ, լուսաստվերի էֆեկտների հարստությամբ ու նրբությամբ: Մ-տ. եղանակը կիրառվում է նաև գունավոր տպագրության համար: Այդ տեխնիկան հնարել է գերմ. վարպետ Լ. Զիգենը, XVII դ. կեսին: Լայնորեն տարածվել է XVIII—XIX դդ., հիմնականում նկարների վերատպության համար:

**ՄԵՔԵՆԱ**, էներգիայի, նյութերի կամ ինֆորմացիայի փոխակերպման նպատակով որոշակի ներդաշնակ շարժումներ կատարող մեխանիկական սարք: Նախատեսված է մարդու արտադրական ֆունկցիաները մասամբ կամ լրիվին փոխարինելու համար: Ըստ հիմնական նշանակման տարբերում են էներգետիկական, բանող և ինֆորմացիոն Մ-ներ: Է ն ե ր գ ե տ ի կ ա կ ա ն Մ-ները ծառայում են էներգիայի ցանկացած տեսակը մեխանիկականի փոխակերպելու համար: Այդ դասին են պատկանում էլեկտրաշարժիչները, էլեկտրագեներատորները (տես *Էլեկտրական մեքենա*), *ներքին այրման շարժիչները*, *տուրբինները*, *շոգեգեներատորները* են: Բ ա ն ո ղ Մ-ները լինում են տեխնոլոգիական (*մետաղահատ հաստոցներ*, *գլոցման հաստոցներ*, *ջուլհակահաստոցներ*, փաթեթավորման Մ-ներ, պոլիգրաֆիական Մ-ներ) և տրանսպորտային (*ավտոմոբիլ*, *ջերմաքարշ*, *ինքնաթիռ*, *ուղղաթիռ*, *կոնվեյեր* են): Տեխնոլոգիական Մ-ում նյութը մշակվող առարկան է, որը կարող է գտնվել պինդ, հեղուկ կամ գազանման վիճակում: Այդ Մ-ներում նյութի փոխակերպումը՝ դրա ձևի, հատկությունների, վիճակի և դիրքի փոփոխությունն է: Տրանսպորտային Մ-ներում տեղի է ունենում միայն նյութի՝ տեղափոխվող առարկայի, դիրքի փոփոխություն: Ի ն ֆ ո ր մ ա ց ի ո ն Մ-ները նախատեսված են ինֆորմացիայի փոխակերպման համար: Եթե ինֆորմացիան ներկայացված է թվերի տեսքով, ապա ինֆորմացիոն Մ. կոչվում է հաշվիչ կամ հաշվողական (հաշվեմեքենաներ, մեխանիկական ինտեգրատորներ, հաշվապահական Մ-ներ):

Այն Մ., որում էներգիայի, նյութերի, ինֆորմացիայի փոխակերպումը կատարվում է առանց մարդու անմիջական մասնակցության, կոչվում է ա վ տ ո մ ա տ-

մ ե ք ե ն ա կամ *ավտոմատ*: Հաջորդաբար միացված և որոշակի տեխնոլոգիական պրոցեսի կատարման համար նախատեսված ավտոմատ Մ-ների համախումբը կոչվում է *ավտոմատ գիծ*:

Գրկ. Теория машин и механизмов, в. 1—108, М., 1947—65; Механика машин, в. 1—36—, М., 1966—72—.

**ՄԵՔԵՆԱԲՈՒԺՈՒԹՅՈՒՆ**, մ ե խ ա ն ո թ ե ր ա պ ի ա (< հուն. μηχανή — մեքենա և *թերապիա*), բուժման մեթոդ. նպատակն է առանձին հոդերում շարժումների զարգացումը՝ հատուկ սարքերով ֆիզիկական վարժությունների կատարմամբ: Հիմնադիրը շվեդ բժիշկ Գ. Ցանդերն է: Տարբեր տիպի սարքերի օգտագործումը հիմնավորված է հոդերի շարժումների կենսամեխանիկայով: Շարժումները խիստ մեկուսացված են և համապատասխանում են որոշակի հոդի կամ մկանախմբի: Սարքերի դիմադրությունն ավելացնելով կամ պակասեցնելով կարելի է փոփոխել հոդի ծանրաբեռնվածությունը: Հատուկ հարմարանքների օգնությամբ հնարավոր է փոխել ռիթմիկ շարժումների արագությունը: Վարժություններին բնորոշ է շարժումների ավտոմատացումը, որի դեպքում բացառվում է կենտրոնական նյարդային համակարգի կոորդինացնող ազդեցությունը: Մ. ինքնուրույն նշանակություն չունի, այն կիրառվում է *բուժական ֆիզկուլտուրայում*՝ որպես լրացուցիչ ներգործություն հենաշարժական ապարատի տարբեր հատվածների վրա: ՀՍՍՀ-ում բուժական մարմնամարզության սարքերի համալիր է մշակել Գ. *Մինասյանը*:

Գրկ. Михайлов К. В., Альбом аппаратов лечебной гимнастики, М., 1945; Минасян Г. А., Аппаратура по лечебной гимнастике, Е., 1966.

**ՄԵՔԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ**, մեքենաների մասին գիտություն. միավորում է *մեքենաշինության* հետ կապված առավել ընդհանուր հարցերին վերաբերող գիտական հետազոտությունների համախումբ՝ անկախ մեքենայի ճյուղային պատկանելությունից և նպատակային նշանակումից: Մ. ներառնում է *մեքենաների և մեխանիզմների տեսությունը*, մեքենաշինության մեջ կիրառվող նյութերի հատկություններն ուսումնասիրող առարկաները (օրինակ, *մետաղագիտություն*), շահագործման տարբեր պայմաններում մեքենաների դետալների և հանգույցների ամրությունն ու կրող ունակությունն ուսումնասիրող առարկաները (տես *Նյութերի դիմադրություն*, *Առաձգականության տեսություն*, *Պլաստիկության տեսություն*, *Մեքենաների դետալներ*), շփման տեսությունը, մեքենաների հանգույցներում դետալների մաշման հետազոտումը (տես *Շփում*, *Մաշակայունություն*), որոնց հիման վրա լուծվում են օ. գ. գ-ի բարձրացման, մեքենաների պաշարների մեծացման, դրանց երկարակեցության, պատրաստման օպտիմալ տեխնոլոգիական պրոցեսների հետազոտման, մեքենաշինության մեջ՝ հուսալիության պրոբլեմները, էներգիայի ռացիոնալ օգտագործման, մեքենաների արտադրողականության և տնտեսողաբերության բարձրացման հարցերը, մեքենաներում ավտոմատ կառավարման պրոբլեմները են: Մ-ի զարգացումը կախված է ավտոմատիկայի, աերո- և գազադինամիկայի, հիդրոդինամիկայի, թերմոդինամիկայի, ֆիզիկայի, քիմիայի, էլեկտրոնիկայի և գիտության այլ բնագավառների նվաճումների հետ: Իր հերթին էլ Մ. նպաստում է գիտության այս ճյուղերի զարգացմանը: *Թ. Ղալանչյան*

**ՄԵՔԵՆԱԺԱՄԱՆԱԿ**, 1. ժամանակահատված, որի ընթացքում սարքավորումը (մեքենա, հաստոց, ագրեգատ, ապարատ) առանց բանվորի անմիջական մասնակցության փոփոխում է աշխատանքի առարկայի չափերը, ձևը կամ վիճակը: 2. Ժամանակ, որ ԷՀՄ ծախսում է հաշվողական որոշակի աշխատանք կատարելիս:

**ՄԵՔԵՆԱՀԱՇՎՈՂԱԿԱՆ ԿԱՅԱՆ (ՄՀԿ)**, վիճակագրական, հաշվապահական և պլանային-տնտեսական ինֆորմացիայի մշակման հետ կապված հաշվարկներն իրականացնող կազմակերպություն: ՄՀԿ-ի հիմնական սարքավորումը բաղկացած է հաշվա-պերֆորացիոն լրակազմերից՝ *ծակատիչներից*, հսկիչ սարքերից, *տեսակավորող հաշվողական մեքենաներից* ու *տաբուլյատորներից*, որպես կանոն նաև մի քանի *ստեղնային հաշվողական մեքենայից*: Տնհաշվարկային խոշոր ՄՀԿ-ներն անվանվում են մեքենայացված հաշվարկի ֆաբրիկաներ (ՄՀՖ): Փոքր ծավալի աշխատանքներ կատարելու համար կազմակերպվում են մեքենահաշվողական բյուրոներ (ՄՀԲ), որոնցում օգտագործում են միայն ստեղնային հաշվողական մեքենաներ: Ինֆորմացիայի մշակման առավել խոշոր կազմակերպություններ են հաշվողական կենտրոնները, որոնք հագեցված են էլեկտրոնային *թվանշանային հաշվողական մեքենաներով*: ՄՀԿ-ում ինֆորմացիան ընդունվում է տարբեր փաստաթղթերի ձևով: Տվյալների մշակման տեխնոլոգիական պրոցեսը պայմանականորեն բաժանվում է 3 փուլի՝ ա. փաստաթղթերի ընդունում և նախնական մշակում, բ. մեքենակիր ինֆորմացիայի նախապատրաստում և գրանցումների հսկում, գ. պերֆոքարտերի խմբավորում և դրանց հսկողություն, տվյալների մշակում, ստացված ցանկագրերի ստուգում ու դրանց ձևակերպում: ՄՀԿ-ի սարքավորումը տեղակայվում է առանձին շենքում, երբեմն փաստաթղթերի նախնական մշակման սարքերը դրվում են անմիջականորեն սպասարկվող ձեռնարկությունում (ՄՀԿ-ի մասնաճյուղերում), իսկ երրորդ փուլի օպերացիաները կատարող սարքերն օգտագործվում են կենտրոնացված կարգով: ՄՀԿ-ներ կան ՀՍՍՀ գրեթե բոլոր շրջաններում: *Ա. Պետրոսյան*

**ՄԵՔԵՆԱՅԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆ**, հասարակական արտադրության զարգացման պատմական աստիճան, որի տեխնիկական հիմքը *մեքենաներն* են: Կազմավորվել է կապիտալիզմի ժամանակ և եղել նրա լինելիության նյութական հիմքը: Մ. ա. փոխարինել է ֆեոդալական դարաշրջանի մանր, մասնատված և ձեռքի տեխնիկայի վրա հիմնված արհեստային արտադրությանը: Խոշոր Մ. ա-յան զարգացմամբ ավարտվել է արտադրության կապիտալիստական եղանակի ձևավորումը:

Մ. ա-յան նյութական և տնտ. նախադրյալները ստեղծվել են մանուֆակտուրային արտադրության (տես *Մանուֆակտուրա*) պայմաններում: Աշխատանքի մանուֆակտուրային բաժանման շնորհիվ մասնագիտացան աշխատանքի գործիքները և բանվորները, դրանով իսկ պայմաններ ստեղծվեցին ձեռքի աշխատանքի գործիքները մեքենաներով փոխարինելու համար: Մեքենայական տեխնիկայի զարգացման հիման վրա մանուֆակտուրային արհեստանոցը վերափոխվեց կապիտալիստական *ֆաբրիկայի*: Զարգացման որոշ աստիճանում Մ. ա. հեղաշրջեց մանուֆակտուրայի տեխ. հիմքը և ստեղծեց իրեն համապատասխան տեխ. բազիս: Խոշոր արդյունաբերության հիմքը դարձավ մեքենան, սկսվեց մեքենայի միջոցով մեքենայի արտադրությունը: Խոշոր Մ. ա. առաջացավ *արդյունաբերական հեղաշրջման* հետևանքով, որն սկիզբ առավ Անգլիայում XVIII դ. 2-րդ կեսին և ընդգրկեց Արևմտյան Եվրոպայի մյուս երկրները, Ռուսաստանը, ԱՄՆ-ը ևն:

Մ. ա. բնութագրվում է նրանով, որ աշխատանքի պրոցեսը ստանում է կոոպերատիվ բնույթ, խորանում է աշխատանքի բաժանումն ինչպես առանձին ձեռնարկության, այնպես էլ ամբողջ հասարակության ներսում, բարձրանում է արտադրության միջոցների և աշխատուժի համակենտրոնացման աստիճանը, տեխ. անհրաժեշտություն է դառնում արտադրության կառավարման և կազմակերպման աշխատանքը: Վիթխարի չափով զարգացնելով արտադրությունը և բարձրացնելով աշխատանքի արտադրողականությունը՝ Մ. ա. խորացրեց կապիտալիզմին հատուկ հակամարտ հակասությունները: Մ. ա-յան զարգացմամբ մեծացան կապիտալի կուտակման չափերը, աճեց պրոլետարիատի բացարձակ թիվը: Միաժամանակ, մեքենաների կիրառումը հարաբերականորեն կրճատեց աշխատուժի պահանջը և ավելացրեց գործազուրկների բանակը, բանվոր դասակարգի դրությունը վատթարացավ հարաբերականորեն և բացարձակորեն:

Կապիտալիստական Մ. ա-յան զարգացման նորագույն աստիճանը կապված է ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության հետ, երբ ավտոմատացվում է արտադրությունը, և էկոնոմիկան ենթարկվում կառուցվածքային փոփոխությունների: Այն բարձր մակարդակի է հասնում պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում: Սակայն աշխատանքի արտադրողականության բարձրացման և հասարակության նյութական հարստության աճի համար ստեղծելով վիթխարի հնարավորություններ՝ Մ. ա. անհաշտելի հակասության մեջ է ընկնում կապիտալիստական արտադրական հարաբերությունների հետ, տեխ. առաջընթացը կատարվում է անհամաչափ, աճում են կապիտալիստական երկրների էկոնոմիկայի ռազմականացումը, գործազրկությունը, բնակչության որոշ շերտերի նյութական անապահովվածությունը ևն:

Սոցիալիզմը կապիտալիզմից պատմականորեն ժառանգում է խոշոր Մ. ա.՝ վերացնելով դրա կապիտալիստական ձևը,

հակամարտ հակասությունների ու անհամաչափ զարգացումը: Այն երկրներում, որտեղ Մ. ա. տնտեսության համընդհանուր ձև չէ, սոցիալիստական հեղափոխության ընթացքում ստեղծվում է սոցիալիզմին համապատասխան նյութատեխնիկական բազա, կատարվում *ինդուստրացում*: Սոցիալիստական Մ. ա. զարգանում է պլանաչափորեն, նպատակը հասարակության բոլոր անդամների նյութական և կուլտուրական աճող պահանջմունքների բավարարումն է: Իր զարգացմամբ այն նպաստում է հասարակական արտադրության ինտենսիվացմանը և արդյունավետության բարձրացմանը: Սոցիալիստական Մ. ա. *կոմունիզմի նյութատեխնիկական բազայի* ստեղծման հիմքն է:

*Վ. Ներկարարյան*

**ՄԵՔԵՆԱՅԱԿԱՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ**, 1. թարգմանություն ավտոմատ սարքերի օգնությամբ (գործնական առում), 2. գիտական հետազոտությունների բնագավառ, որի նպատակն է լեզվի (մասնավորապես թարգմանության ընթացքում) կաղապարման միջոցով թարգմանական համակարգերի ստեղծումը (տեսական առում): Մ. թ. սերտորեն կապված է տեսական և կիրառական լեզվաբանության, *մաթեմատիկական լեզվաբանության*, ծրագրավորման տեսության և պրակտիկայի, հաշվողական մեքենաների ավտոմատ ծրագրավորման, *ինֆորմատիկայի* հետ: Առաջին թարգմանական մեքենան նախագծել և կառուցել է ֆրանսիահայ ինժեներ Գևորգ (Ժորժ) Արծրունին, 1932-ին: Մ. թ-յան աշխատանքները բուռն կերպով զարգացան հատկապես 40—50-ական թթ. (ԱՄՆ-ում՝ 1947-ից, ՍՍՀՄ-ում՝ 1954-ից, ՀՍՍՀ-ում՝ 1958-ից)՝ էլեկտրոնային հաշվողական մեքենաների ստեղծումից հետո: 1962-ին ՀՍՍՀ ԳԱ հաշվողական կենտրոնում «Արագած» հաշվողական մեքենայի օգնությամբ ստացվեց մաթ. տեքստերի հայերեն-ռուսերեն փորձնական թարգմանություն: 1967-ին Ռ. Ուռուտյանի, Վ. Գրիգորյանի, Թ. Տեր-Միքայելյանի և այլոց մասնակցությամբ նախագծվեց ու կառուցվեց նոր տիպի՝ «Գառնի» թարգմանական մեքենան: Թարգմանական համակարգերը կազմվում են երկու բաղկացուցիչ մասերից՝ մեքենական բառարանից և թարգմանության ալգորիթմից: Մեքենական բառարանում գրանցվում են բառեր՝ իմաստային և քերականական բնութագրերով: Թարգմանության ալգորիթմն ընդգրկում է ձևաբանական ու շարահյուսական, ինչպես նաև մի լեզուն մյուսին փոխակերպելու կանոնները: Մ. թ-յան պրոցեսը կատարվում է ընդհանուր տիպի ալգորիթմով, որը հայտնաբերում և իրականացնում է տվյալ էտապում տեքստի մշակման բոլոր հնարավոր եղանակները՝ հանգեցնելով թույլատրելի արդյունքի (նշված կանոններով): Հաջորդ փուլերում ավելորդ և սխալ տարբերակները զատվում են: Մ. թ-յան պրոցեսը կարելի է տրոհել 5 փուլի: Առաջինում տեքստը ներածվում է թարգմանական համակարգ: Երկրորդում կատարվում է տեքստի վերլուծություն՝ նախ ձևաբանական (յուրաքանչյուր բառի վերաբերյալ մեքենական բառարանից ընտրվում են բառաքերականական բնութագրերը և կազմվում քերականական կարգերը), ապա՝ շարահյուսական (շարակարգի և քերականական կարգերի հիման վրա կազմվում է բառերի իմաստա-քերականական կախումների նկարագրությունը): Երրորդ՝ ձևափոխության փուլում, մի լեզուն մյուսին փոխակերպելու կանոնների հիման վրա կազմվում է թարգմանության իմաստա-քերականական կախումների նկարագրությունը: Չորրորդում թարգմանված տեքստը համադրվում է. նախ ճշգրտվում է թարգմանության շարակարգը (շարահյուսական համադրում), ապա կազմվում են բառերի համապատասխան քերականական ձևերը (ձևաբանական համադրում): Վերջին փուլում թարգմանված տեքստը արտածվում է: Մ. թ. անցել է զարգացման երեք աստիճան (սերունդ): Առաջին սերնդի համակարգերում վերլուծությունը և համադրումը խիստ կապված էին միմյանց հետ: Վերլուծության ալգորիթմներում հաշվի էին առնված համադրության պահանջները և՝ հակառակը: Երկրորդ սերնդի համակարգերում վերացվեց վերլուծության ու համադրման կապվածությունը և ընտրվեց միմյանցից անկախ վերլուծության ու համադրման սկզբունքը: Առաջ քաշվեց բազմատարբերակ վերլուծության պահանջ: Տեքստի նկարագրությունը կատարվում էր տարբեր կարգի ձևային քերականությունների օգնությամբ: Երրորդ սերնդի համակարգերը, լրիվ պահպանելով նախորդ սերնդի առանձնահատկությունները, հագեցված են իմաստաբանական ինֆորմացիայով հարուստ մեքենական բառարաններով և տեքստի իմաստային վերլուծության ու բազմատարբերակ համադրման ալգորիթմներով: Գիտատեխնիկական ինֆորմացիայի մշակման ավտոմատացման համար գործնականում կիրառվում են Մ. թ-յան պարզեցված և մասնագիտացված համակարգեր:

*Գրկ.* Ուռուտյան Ռ. Լ., Կիբեռնետիկան և լեզվաբանությունը, Ե., 1978:

*Ռ. Ուռուտյան*

**ՄԵՔԵՆԱՅԱՑՎԱԾ ԿԻԹ**, տես *Կիթ*:

**ՄԵՔԵՆԱՅԱՑՈՒՄ** արտադրության, ձեռքի աշխատանքի միջոցների մասնակի կամ լրիվ փոխարինում մեքենաներով, մեխանիզմներով ու սարքերով: Ընդգրկում է նաև մտավոր աշխատանքի ոլորտը (տես, օրինակ, *Հաշվառման մեքենայացում*): Մ-ման գլխավոր նպատակը աշխատանքի արտադրողականության բարձրացումն և ծանր, աշխատատար ու հոգնեցուցիչ օպերացիաներ կատարելից մարդուն ազատելն է: Այն նպաստում է հումքի, նյութերի, էներգիայի ռացիոնալ օգտագործմանը, արտադրանքի որակի բարձրացմանը, ինքնարժեքի իջեցմանը: Մ. տեխ. առաջընթացի գլխավոր ուղղություններից է, արտադրության արդյունավետության բարձրացման և արտադրողական ուժերի զարգացման նյութական հիմքը: Տարբերում են մասնակի ու համալիր Մ.: Մասնակիի դեպքում մեքենայացվում են արտադրական առանձին օպերացիաներ կամ աշխատանքներ (առավել աշխատատար), բայց պահպանվում է ձեռքի աշխատանքի զգալի մասը: Համալիր Մ-ման ժամանակ տեխնոլոգիական պրոցեսի բոլոր հիմնական օպերացիաներում և օժանդակ աշխատանքներում ձեռքի աշխատանքի միջոցները փոխարինվում են մեքենաներով: Համալիր Մ-ից հետո արտադրական պրոցեսի զարգացման հաջորդ աստիճանն *արտադրության ավտոմատացումն* է (տես նաև *Ավտոմատ*, *Ավտոմատ գիծ*, *Ավտոմատ կառավարում*): Մ. գնահատվում է տարբեր ցուցանիշներով. աշխատանքի Մ-ման գործակից (մեքենայացված ու ձեռքի աշխատաժամանակների հարաբերություն), արտադրության Մ-ման գործակից (մեքենայական եղանակով թողարկված արտադրանքի և արտադրանքի ընդհանուր ծավալների հարաբերություն), աշխատանքի մեքենազինվածություն (արտադրական մեքենաների ու մեխանիզմների արժեքի ու բանվորների թվի հարաբերություն), աշխատանքի էներգազինվածություն կամ, երբեմն՝ էլեկտրազինվածություն (մեխանիկական և էլեկտրական էներգիայի ու բանվորների թվի հարաբերություն) ևն:

Հասարակական արտադրության Մ. սկսվել է XVIII դ. վերջերին: Այն ընթացել է աշխատաձևերի ու աշխատամիջոցների զարգացման, ունիվերսալ շոգեմեքենայի ստեղծման, մեքենաների ու մեխանիզմների կիրառման ուղիով, որի շնորհիվ հեղաշրջում է կատարվել արդյունաբերության մեջ (տես *Արդյունաբերական հեղաշրջում*), և բոլոր զարգացած երկրներում լայն տարածում է ստացել *մեքենայական արտադրությունը*: Աստիճանաբար կիրառվել է ներքին այրման շարժիչը, ստեղծվել են բանող ու տրանսպորտային մեքենաներ, էներգիայի փոխակերպման նոր եղանակներ, էլեկտրական հոսանքի գեներատորներ, էլեկտրաշարժիչներ ևն: Մ-յան հետագա առաջընթացը կապված է տեխ. նվաճումների ու գիտական հայտնագործությունների ներդրման հիման վրա արտադրական պրոցեսների առավելագույն ինտենսիվացման, արտադրական ցիկլի կրճատման, համալիր Մ-յան, մեքենաների ավտոմատ գծերի, ավտոմատ արտադրամասերի ու գործարանների ստեղծման հետ: Գիտատեխնիկական առաջընթացի և աշխատանքի նոր միջոցների ստեղծման առավել կարևոր ուղղություններն են՝ սինթեզի հետագա զարգացումը, էներգիայի ուղղակի փոխակերպումը, հումքի բազմակողմանի մշակումը, շրջակա միջավայրի պահպանումը: Մ-ման տեխ. միջոցների զարգացման նախապայմաններն են՝ ա. նոր, բարձրարդյունավետ մեքենաների, մեխանիզմների, հատկապես անընդհատ գործողության մեքենաների ու սարքերի, մեքենակոմպլեքսների ու ավտոմատների ստեղծում, աշխատանքային ու տրանսպորտային առավել բարձր արագություն ունեցող Մ-ման միջոցների նախագծերի մշակում, բ. մեքենաների հզորության ավելացման հետ՝ դրանց նյութատարության ու էներգատարության կրճատում, գ. ժողտնտեսության տարբեր ճյուղերի համար միասնականացված, փոխարինվող սարքեր ունեցող մեքենաների ստեղծում, արտադրության մեջ լայն անվանացանկի շարժուն մեքենա-գործիքների (հատկապես

բարձող-բեռնաթափող, շինարարական, տրանսպորտային, ճանապարհային են) օգտագործում, դ. նոր, բարձրորակ նյութերի, արագությունների կարգավորման լայն ընդգրկում ունեցող հիդրավլիկ ու էլեկտրական ուղղակի փոխանցումների, աշխատանքի օպտիմալ ռեժիմների պահպանման համար ավտոմատ սարքերի, տարածության վրա ու ծրագրային կառավարման կիրառում, ե. սպասարկող անձնակազմի աշխատանքի պայմանների բարելավում, զ. արտադրական պրոցեսների համալիր Մ-ման ու ավտոմատացման պայմաններում արտադրանքի քանակի ու որակի հաշվառման Մ-ման միջոցների օգտագործում:

ՍՍՀՄ-ում Մ. եղել է երկրի *ինդուստրացման*, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման հիմքը և կանխորոշում է հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերը: Այն իրականացվում է արդյունաբերությունը, շինարարությունը, տրանսպորտը, գյուղատնտեսությունը մեքենաներով, մեխանիզմներով ու սարքերով (մետաղահատ հաստոցներ, դարբնոցամամլիչ մեքենաներ, տուրբիններ, գեներատորներ, ամբարձիչներ են) համալրելու ուղիով: ՍՍՀՄ-ում մեքենաների, մեխանիզմների ու սարքերի արտադրությունն առավել բարձր տեմպերով է զարգացել արդյունաբերության առաջատար ճյուղերում (էներգա- և էլեկտրամեքենաշինություն, հաստոցաշինություն, լեռնահանքային ու քիմ. մեքենաշինություն): Աճի բարձր տեմպերը բնորոշ են նաև սարքաշինությանը, ռադիոսարքերի, ավտոմատիկայի ու հաշվողական տեխնիկայի միջոցների, կենցաղային էլեկտրասարքերի ու մեխանիզմների արտադրությանը: Հասարակական աշխատանքի արտադրողականությունը ՍՍՀՄ ժողտնտեսության տարբեր բնագավառների տեխ. վերազինման շնորհիվ 1940—79-ին աճել է 10,5 անգամ, այդ թվում արդյունաբերության մեջ՝ 7,5, գյուղատնտեսության մեջ՝ 4, երկաթուղային տրանսպորտում՝ 4,7, շինարարության մեջ՝ 6,3 անգամ: 1976—1979-ին արդյունաբերության մեջ ներդրըվել է մեքենաների ու սարքավորումների 10,8 հզ. նմուշ, մոդեռնացվել արտադրական 646 հզ. սարքավորում: 1979-ին գործում էր մեքենայացված հոսքային ու ավտոմատ 160 հզ. գիծ, համալիր մեքենայացված, ավտոմատացված մոտ 83 հզ. տեղամաս, արտադրամաս ու արտադրություն: 1940—79-ին արդյունաբերության մեջ աշխատանքի էներգազինվածությունն աճել է 7, էլեկտրազինվածությունը՝ 7,1 անգամ: Բարձրացել է նաև *գյուղատնտեսության մեքենայացման* մակարդակը. էլեկտրիֆիկացվել են գրեթե բոլոր ձեռնարկությունները, 1940—79-ին դրանց էներգետիկ հզորությունն աճել է 12 անգամ, կազմել 579 մլն *ձ. ու.*, լրիվ մեքենայացված են դաշտային բոլոր հիմնական աշխատանքները: Երկաթուղային, ծովային, գետային տրանսպորտում բեռնման-բեռնաթափման աշխատանքների համալիր Մ-ման մակարդակը համապատասխանաբար կազմել է 91,0, 93,9 և 98,8%: Շինարարության մեջ աշխատանքի մեքենազինվածությունը 1940—79-ին աճել է մոտ 21 անգամ:

Հայկ. ՍՍՀ-ում արտադրությունը բարձր մեքենայացված է: 1976—79-ին արդյունաբերության մեջ մոդեռնացվել է 5818 միավոր արտադրական սարքավորում, ստեղծվել նոր տիպի 263 մեքենա, սարքավորում, ավտոմատացման միջոց: 1979-ի հուլիսի 1-ի դրությամբ արդյունաբերության մեջ կար մեքենայացված 1235, ավտոմատացված 212 հոսքային գիծ, համալիր մեքենայացված ու ավտոմատացված 527 տեղամաս, արտադրամաս, արտադրություն ու 30 ձեռնարկություն, ծրագրային կառավարմամբ 365 միավոր սարքավորում: Մ-ման մակարդակը հատկապես բարձր է մեքենաշինության ու մետաղամշակման, թեթև, սննդի, շինանյութերի արդյունաբերության մեջ: 1979-ին, 1965-ի համեմատ, կրկնակի բարձրացել է գյուղատնտեսության էներգետիկ հզորությունը (կազմել 2493 հզ. *ձ. ու.*), մոտ 2,2 անգամ՝ յուրաքանչյուր աշխատողի էներգազինվածությունը (12,3 *ձ. ու.*): 1979-ին մեքենայացված էին դաշտային բոլոր հիմնական աշխատանքները, իսկ տավարաբուծական, խոզաբուծական ու թռչնաբուծական ֆերմաներում ու համալիրներում համալիր մեքենայացված էին աշխատանքների համապատասխանաբար՝ 13, 45 և 42%-ը: Երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառության մեջ բարձր է էլեկտրաքարշի օգտագործման (1979-ին՝ 99,6%), բեռնմանբեռնաթափման աշխատանքների (88,3%), շինարարական աշխատանքների ընդհանուր ծավալում՝ հողային (95%), բետոնե ու երկաթբետոնե կոնստրուկցիաների մոնտաժման աշխատանքների (96%) համալիր Մ-ման աստիճանը: ՀՍՍՀ ժողտնտեսության ճյուղերում արտադրության տեխ. վերազինման շնորհիվ հասարակական աշխատանքի արտադրողականությունը 1970—79-ին աճել է 155,4%-ով, այդ թվում արդյունաբերության մեջ՝ 147, գյուղատնտեսության մեջ՝ 130, երկաթուղային տրանսպորտում՝ 126,1, շինարարության մեջ՝ 164,4%-ով: Աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին 1976—79-ին ստացվել է ազգային եկամտի հավելաճի 54,8%-ը, տնտեսվել ավելի քան 140 հզ. մարդու աշխատանք: Տես նաև Ժողտնտեսության տարբեր ճյուղերին նվիրված հոդվածները:

*Գրկ.* Մ ա ր ք ս Կ., Կապիտալ, հ. 1, գլուխ 13, Ե., 1954: Լ ե ն ի ն Վ. Ի., Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում, Երկ., հ. 3: Ն ո ւ յ ն ի, Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա, Երկ., հ. 22: ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, Ե., 1981: ՀԿԿ XXVII համագումարի նյութերը, Ե., 1981: Ш а у м я н Г. А., Комплексная автоматизация производственных процессов, М., 1973; Развитие техники в СССР (1917—1977), М., 1978.

*Մ. Վարդանյան*

**ՄԵՔԵՆԱՅԻ ՅՈՒՂ**, տես *Քսայուղեր*:

**ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ԴԵՏԱԼՆԵՐ**, 1. մեքենաների, հարմարանքների և սարքերի առանձին մասեր կամ դրանց պարզագույն միացումներ: Ընդհանուր նշանակման Մ. դ-ի դասին են պատկանում երկատվող (հեղուսային, պտուտակային, երիթային են) և չերկատվող (գամային, եռակցումային, մամլային են) միացումները, փոխանցումները (ատամնավոր, որդնակային, շղթայական, շփական են), *լիսեռները*, *կցորդիչները*, *առանցքակալները*, *զսպանակները*, *զսպանները*, խողովակաշարի տարրերը են: 2. Մ. դ-ի տեսության, հաշվարկի և կառուցման մասին գիտական առարկա, որի հիմնական խնդիրը ռացիոնալ դետալների նախագծման եղանակների և նորմաների մշակումն է (տեսականորեն հիմնավորված և փորձով ստուգված): «Մ. դ.» գիտական առարկան կապված է տեսական մեխանիկայի, մեքենաների և մեխանիզմների տեսության, նյութերի դիմադրության, մետաղագիտության, մշակման և հավաքման տեխնոլոգիայի, ինչպես նաև տեխ. գծագրության հետ: Մ. դ-ի պատրաստման տեխնոլոգիական պրոցեսի ընտրությունը նախատեսում է ամուր, մաշակայուն դետալների ստեղծում:

*Գրկ.* Детали машин. Атлас конструкций, под ред. Д. Н. Решетова, 3 изд., М., 1968; Детали машин. Справочник, т. 1—3, М., 1968—69.

**ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ԵՎ ՄԵԽԱՆԻԶՄՆԵՐԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ**, գիտություն, մեքենաների ու մեխանիզմների հետազոտման և նախագծման ընդհանուր մեթոդների մասին: Մ ե խ ա ն ի զ մ ն ե ր ի տեսությունն առավելապես ուսումնասիրում է բոլոր մեխանիզմների համար ընդհանուր հատկությունները: Մ ե ք ե ն ա ն ե ր ի տեսությունում դիտարկվում են հետազոտման ու նախագծման մեթոդներ, որոնք ընդհանուր են տեխնիկայի տարբեր բնագավառներում օգտագործվող մեքենաների համար:

Մ. և մ. տ-յան հիմնական բաժիններն են՝ *մեխանիզմների սինթեզը*, մեքենաների ու մեխանիզմների դինամիկան և ավտոմատ մեքենաների տեսությունը, որը զբաղվում է *ծրագրային կառավարման* համակարգերի ստեղծմամբ, ինչպես նաև *ռոբոտների* նախագծմամբ:

**ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ՀԱՄԱԿԱՐԳ**, *մեքենաների* բարդ կոոպերացիա. միմյանց լրացնող տարասեռ մեքենաների շարք, որոնք իրականացնում են արդյունքի պատրաստման տեխնոլոգիական պրոցեսի հաջորդական փուլերը: Դրանով Մ. հ. տարբերվում է մեքենաների պարզ կոոպերացիայից, որը համասեռ ու միաժամանակ գործող մեքենաների տարածական կենտրոնացում է: Մ. հ-ի կիրառման շնորհիվ խորացել է աշխատանքի տեխ. ու հասարակական բաժանումը, ուժեղացել արտադրության հասարակական բնույթը, փոխվել բանվորի ֆունկցիոնալ դերը և էապես բարձրացել աշխատանքի արտադրողականությունը:

**ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ՀԱՎԱՔՈՒՄ**, պատրաստի հանգույցների, դետալների և ագրեգատների որոշակի հաջորդականությամբ միացում, որի հետևանքով ստացվում է սահմանված տեխնիկական պայմաններին լիովին բավարարող պատրաստի մեքենա կամ մեխանիզմ: Տարբերում են հ ա ն գ ո ւ յ ց ա յ ի ն Մ. հ., որի դեպքում առանձին դետալներից հավաքում են հանգույցներ և ագրեգատներ, և ը ն դ հ ա ն ո ւ ր, երբ հանգույցներից և ագրեգատներից մոնտաժում են մեքենաներ: Մ. հ. կազմում է մեքենաների պատրաստման ընդհանուր աշխատատարության 40%: Զանգվածային

շինվածքները (գլորման առանցքակալներ, հողակալի շղթաներ, ավտոմոբիլի կարդանային փոխանցումներ են) հավաքվում են ավտոմատներով և կիսաավտոմատներով: Ըստ արտադրության պահանջների Մ. հ. կատարվում է. դետալների (հանգույցների) լիակատար համափոխարինելիության դեպքում, դետալներն ըստ խմբերի տեսակավորելով, դետալների ընտրության, կոմպենսատորների կիրառման, դետալների անհատական հարմարադրման եղանակներով:

**ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ՓՈՐՁԱՐԿՈՒՄ**, փորձով մեքենաների կոնստրուկտիվ և շահագործման հատկությունների որոշում: Մ. փ. կարևոր է հատկապես նոր մեքենաների ընդունման ժամանակ, երբ անհրաժեշտ է պարզել, թե որքանով են մեքենայի հատկությունները (*ամրությունը*, *մաշակայունությունը*, *հուսալիությունը* են) համապատասխանում տեխ. պահանջներին: Փորձարկումները կատարվում են ըստ հաստատված ծրագրի ու տեխ. պայմանների: Նախքան մեքենաները սերիական արտադրության հանձնելը, դրանք ենթարկում են լաբորատոր, գործարանային շահագործման, ընթացային, թռիչքային, ճանապարհային և այլ փորձարկումների: Որոշ դեպքերում մեքենաների հուսալիությունը և երկարակեցությունը պարզելու նպատակով կատարում են արագացված փորձարկումներ (սովորականից ցածր աշխատանքային պայմաններում), որոնք հնարավորություն են տալիս կարճ ժամկետում պարզելու հիմնական հանգույցների և մասերի մաշման ինտենսիվությունը, խափանումների առաջացման պատճառները են: Մ. փ. նոր տեխնիկայի ստեղծման նախագծային և հետազոտական աշխատանքի բաղադրիչ մասն է և կարևոր նշանակություն է ստանում մեքենաների որակի բարձրացման և դրանց յուրացման ժամկետների կրճատման գործում:

*Ռ. Աճեմյան*

**ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅՈՒՆ**, *ծանր արդյունաբերության* ճյուղերի համալիր, ուր ժողովրդական տնտեսության համար ստեղծվում են աշխատանքի գործիքներ, ինչպես նաև սպառման առարկաներ ու պաշտպանական նշանակության արտադրանք: Գիտատեխնիկական առաջընթացի կրողն ու ամբողջ ժողտնտեսության տեխ. վերազինման նյութական հիմքն է: ՍՍՀՄ-ում Մ-յան զարգացումն արտադրության բոլոր ճյուղերը գիտության և տեխնիկայի վերջին նվաճումների հիման վրա վերակառուցելու, հասարակական աշխատանքի արտադրողականության, բնակչության նյութական բարեկեցության և երկրի պաշտպանունակության մակարդակը բարձրացնելու վճռական պայմանն է: Կազմել է երկրի սոցիալիստական *ինդուստրացման*, ՍՍՀՄ-ը բարձր զարգացած տերության վերածելու հիմքը:

Մ. արտադրական առավել խոշոր խմբի՝ Մ-յան ու մետաղամշակման բաղկացուցիչ մասն է, որը ներառում է նաև մետաղաիրերի, մետաղակոնստրուկցիաների, մեքենաների ու սարքավորումների նորոգման արտադրությունը: Մ-յան խոշոր ենթաճյուղերն են՝ *ավիացիոն արդյունաբերությունը*, *ավտոմոբիլային արդյունաբերությունը*, *գործիքաշինական արդյունաբերությունը*, *էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը*, *հաստոցաշինությունը*, *նավաշինությունը*, *ռադիոարդյունաբերությունը*, *սարքաշինությունը*, *տրակտորաշինությունը* են: Թողարկվող արտադրանքի ծավալով, արտադրական հիմնական ֆոնդերի արժեքով և զբաղված բանվորների թվով Մ. ՍՍՀՄ արդյունաբերության մյուս ճյուղերի շարքում առաջինն է: 1979-ին Մ-յան ու մետաղամշակման բաժինը կազմել է ՍՍՀՄ արդ. արտադրության ծավալի մոտ 27,9, հիմնական արտադրական ֆոնդերի 23,3%-ը:

Մ. որպես արդյունաբերության ճյուղ ձևավորվել է XVIII դ., բարձր տեմպերով զարգացել սկզբում Մեծ Բրիտանիայում, Արևմտյան Եվրոպայի մյուս երկրներում, ապա՝ ԱՄՆ-ում: Ռուսաստանում մեքենաշինական առաջին ձեռնարկությունները կառուցվել են XVIII դ.: Մ. հետամնաց էր, կախման մեջ էր օտարերկրյա կապիտալից, թողարկում էր սահմանափակ տեսականիով փոքր ծավալի արտադրանք: Այն զարգացման բարձր մակարդակի հասավ սովետական իշխանության հաստատումից հետո, որը պայմանավորված էր սոցիալիստական ինդուստրացման քաղաքականությամբ և մեքենաների ու սարքավորումների նկատմամբ կապիտալ շինարարության անընդհատ աճող պահանջներով: I հնգամյակի տարիներին (1929—32) Մ-յան ու մետաղամշակման համախառն արտադրանքի հավելաճի միջին տարեկան տեմպը կազմել է 41,3, II հնգամյակում (1933—37)՝ 23,1, իսկ նախապատերազմյան երեք տարիներին (1938—40)՝ 20,7%: Հայրենական մեծ պատերազմի տարիներին բազմաթիվ ձեռնարկություններ տեղափոխվեցին երկրի արլ. շրջանները և Մ-յան խոշոր կենտրոններ դարձան Պովոլժիեն, Ուրալը, Արևմտյան Սիբիրը: Աճի առաջանցիկ տեմպերը բնորոշ են նաև ետպատերազմյան տարիներին (1979-ին ճյուղի համախառն արտադրանքի ծավալը 1940-ի մակարդակը գերազանցում էր 68, աշխատանքի արտադրողականությունը՝ 18,2 անգամ), որի շնորհիվ վիթխարի չափերով ընդլայնվել ու կատարելագործվել է Մ-յան տեխ. բազան, բարձրացել երկրի պաշտպանունակության մակարդակը: 1979-ին Մ-յան և մետաղամշակման 8776 ձեռնարկություններ ժողտնտեսությանը մատակարարել են 230 հզ. մետաղահատ հաստոց, 56,3 հզ. դարբնոցամամլիչային մեքենա, 29,6 հզ. խոշոր էլեկտրամեքենա, հանքաքարային 2471 էլեկտրաքարշ, 41,7 հզ. ամբարձիչ, 557 հզ. տրակտոր, 2173 հզ. ավտոմեքենա են: Մ-յան բազմաթիվ արտադրատեսակներ իրենց տեսակի մեջ եզակի են և առաջինը ստեղծվել են ՍՍՀՄ-ում: Մ-յան և մետաղամշակման արտադրանքի ծավալով ՍՍՀՄ-ը Եվրոպայում առաջինն է, աշխարհում՝ երկրորդը (ԱՄՆ-ից հետո):

Սոցիալիստական մյուս երկրներից Մ. բարձր զարգացած է նաև ԳԴՀ-ում (սարքաշինություն, նավաշինություն են), Չեխոսլովակիայում (ծանր մեքենաշինություն), Հունգարիայում (ավտոբուսների արտադրություն, ռադիոարդյունաբերություն) են: Ճյուղի առաջընթացի համար, հատկապես ՏՓԽ-ի անդամ-երկրներում, մեծ նշանակություն ունի աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանումը, որը հիմնվում է արտադրության միջճյուղային մասնագիտացման վրա: Կապիտալիստական երկրներում Մ-յան արտադրանքի հիմնական մասը թողարկում են ԱՄՆ-ը, ԳՖՀ-ն, Մեծ Բրիտանիան, Ֆրանսիան, Իտալիան, Ճապոնիան և Շվեյցարիան. արտադրությունը բարձր մոնոպոլացված է, ունի ռազմ. ուղղվածություն:

Նախահեղափոխական Հայաստանում թույլ զարգացած արդյունաբերության և հետամնաց գյուղատնտեսության պայմաններում խիստ ետ էին մնում նաև Մ. և մետաղամշակումը, արտադրության ծավալը փոքր էր, տեսականին՝ սահմանափակ: Ճյուղը Երևանում ներկայացնում էին Տեր-Ավետիքովների և Գ. Հախվերդյանի մեխանիկական գործարանները, Վ. Միխայլովի՝ էլեկտրամեխանիկական, ինչպես նաև օպտիկայի և մի քանի տասնյակ այլ արհեստանոցներ, Ալեքսանդրապոլում (այժմ՝ Լենինական)՝ Վ. Հեքիմյանի մեխանիկական-փականագործական արհեստանոցը, որը հետագայում վերակառուցվեց թուջաձուլական-մեխանիկական գործարանի, պղնձաձուլական-մեխանիկական, թիթեղագործական և այլ արհեստանոցներ, Ղարաքիլիսայի (այժմ՝ Կիրովական), Դիլիջանի, Ելենովկայի (այժմ՝ Սևան), Նոր Բայազետի (այժմ՝ Կամո) մետաղամշակման, Ալեքսանդրապոլի և Երևանի շոգեքարշային դեպոների, Ալավերդու և Ղափանի պղնձաձուլական գործարանների մեխանիկական արհեստանոցները: 1913-ին Հայաստանի Մ-յան և մետաղամշակման արդյունաբերության արտադրանքը կազմում էր խոշոր արդյունաբերության արտադրանքի միայն 2,6%-ը:

Մ. բուռն զարգացում ապրեց Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո: Գործող ձեռնարկություններն ազգայնացվեցին, մասնավոր մանր արհեստանոցներն ընդգրկվեցին արդ. կոոպերացիայի մեջ, վերակառուցվեցին Երևանի և Լենինականի մեխանիկական գործարանները, սկսվեց Ֆ. Է. Ձերժինսկու անվ. մեքենաշինական, ավտոնորոգման, Վ. Ի. Լենինի անվ. էլեկտրամեքենաշինական, Քանաքեռի էլեկտրանորոգման գործարանների շինարարությունը, կառուցվեցին մետաղամշակման բազմաթիվ ձեռնարկություններ: 1940-ին, 1913-ի համեմատ, Մ-յան և մետաղամշակման արտադրանքի ծավալն աճեց 15 անգամ, յուրացվեց ժամանակակից բազմաթիվ մեքենաների ու սարքավորումների արտադրությունը: Հայրենական մեծ պատերազմի տարիներին Մ. սկսեց հիմնականում արտադրել ռազմ. արտադրանք, կազմակերպվեցին Երևանի մոտորանորոգման, մետաղյա լայն սպառման ապրանքների գործարանները, հիմնադրվեց Երևանի կաբելի գործարանը, ստեղծվեցին Մ-յան նոր ճյուղեր՝ հաստոցաշինություն, սարքաշինություն, էլեկտրամեքենաշինություն, ընդհանուր մեքենաշինու-

ՀՍՍՀ մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության որոշ արտադրատեսակների արտադրությունը 1950—79-ին

| | 1950 | 1960 | 1970 | 1979 |
|---|---|---|---|---|
| Փոփոխական հոսանքի գեներատորներ մինչև 100 *կվտ* հզորությամբ, հզ. հատ | 9,5 | 31,0 | 34,5 | 52,9 |
| 100 *կվտ*-ից բարձր հզորությամբ, հատ | 150 | 1816 | 595 | 1150 |
| Փոփոխական հոսանքի էլեկտրաշարժիչներ | | | | |
| 0,25-ից մինչև 100 *կվտ* հզորությամբ, հզ. հատ | — | 218,5 | 508,2 | 864,8 |
| 100 *կվտ*-ից բարձր հզորությամբ, հատ | — | 700 | 1800 | 1730 |
| Շարժական էլեկտրակայաններ, հզ. հատ | 0,0 | 19,9 | 16,4 | 21,2 |
| Ուժային տրանսֆորմատորներ, հզ. *կվտ* | 609 | 3501 | 4804 | 6868 |
| Լուսավորման էլեկտրալամպեր, մլն հատ | — | 47,4 | 134,8 | 179,3 |
| Կենտրոնախույս պոմպեր, հզ. հատ | 2,7 | 40,8 | 83,6 | 115,2 |
| Օդային և գազային կոմպրեսորներ, հատ | 468 | 2212 | 3766 | 5326 |

թյուն են: Ետպատերազմյան շրջանում Մ-յան համակողմանի զարգացումն ուղեկցվել է որակական խոր տեղաշարժերով, ներճյուղային կառուցվածքի և տարածքային տեղաբաշխման առաջադիմական փոփոխություններով, մասնագիտացման խորացմամբ: Կառուցվել են նոր ձեռնարկություններ (Երևանի էլեկտրամեքենաշինական, էլեկտրաճշգրիտ սարքերի, Կիրովականի «Ավտոգենմաշ», Լենինականի հղկող հաստոցների, Չարենցավանի գործիքաշինական են), ստեղծվել և բուռն զարգանում են Մ-յան նոր ճյուղեր՝ էլեկտրոնային, ռադիոէլեկտրոնային, ճշգրիտ և գերճշգրիտ հաստոցաշինական: Ճյուղի տեխ. բազան համալրըվել է բարձրարտադրողական ավտոմատ, կիսաավտոմատ, հատուկ և ագրեգատային հաստոցներով ու մեքենաներով, կատարելագործվել է արտադրության տեխնոլոգիան, որի շնորհիվ 1979-ին, 1940-ի համեմատ, արտադրանքի ընդհանուր ծավալն աճել է 648,3, աշխատանքի արտադրողականությունը՝ 33,5 անգամ:

Հայկական ՍՍՀ-ում յուրացվել է բազմաթիվ նոր, հիմնականում բարդ և աշխատատար արտադրատեսակների արտադրությունը:

ՀՍՍՀ Մ-յան արտադրանքի հարյուրավոր տեսակներ (էլեկտրոնային հաշվողական մեքենաներ, ագրեգատներ, տրանսֆորմատորներ, էլեկտրաշարժիչներ, հաստոցներ) միջազգային ճանաչում ունեն, դրանցից ավելի քան 80-ը արտահանվում է աշխարհի մոտ 60 երկիր: Մ. տալիս է ՀՍՍՀ արդյունաբերության համախառն արտադրանքի 27%-ը (1979): Էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը թողարկվող արտադրանքի ծավալով ՍՍՀՄ-ում երրորդն է, իսկ մետաղահատ հաստոցների, սարքերի և ավտոմատացման միջոցների արտադրությունը՝ հինգերորդը:

Ճյուղի համար կադրեր են պատրաստում Երևանի Կ. Մարքսի անվ. պոլիտեխնիկական ինստ-ը, էլեկտրամեխանիկական, մեքենաշինական, էլեկտրոնային հաշվողական մաթ. մեքենաների, ռադիոէլեկտրակապի, Դիլիջանի ռադիոտեխնիկական, Կիրովականի սարքաշինական են տեխնիկումները: Նոր արտադրատեսակների և տեխնոլոգիական պրոցեսների մշակման հարցերով զբաղվում են Երևանի մաթ. մեքենաների ԳՀԻ, կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական գիտահետազոտական և նախագծային կոնստրուկտորային ինստ-ը, կիսահաղորդիչային տեխնիկայի փորձնական գործարանը, կաբելային արտադրության, նաև էլեկտրամեխանիկայի համամիութենական ԳՀԻ-ների Երևանի բաժանմունքները են:

*Գրկ*. ՍՄԿԿ 25-րդ համագումարի նյութերը, Ե., 1976: Սովետական Հայաստանի տնտեսական զարգացումը 1920—1960, Ե., 1960: Սոցիալիստական վերարտադրության լենինյան ուսմունքը, Ե., 1970: Վիրաբյան Ա. Տ., Սովետական Հայաստանի մեքենաշինության զարգացման ուղիները, Ե., 1977: Розенфельд Я. С., Клименко К. И., История машиностроения СССР, М., 1961; Экономика машиностроительной промышленности СССР, М., 1968.

*Վ. Խոջաբեկյան*

**ՄԵՔԵՆԱ-ՏՐԱԿՏՈՐԱՅԻՆ ԿԱՅԱՆՆԵՐ**, ՄՏԿ, ՍՍՀՄ-ում պետական գյուղատնտեսական ձեռնարկություններ, որոնք նախատեսված էին կոլտնտեսություններին տեխ. և կազմակերպչական օգնություն ցույց տալու համար: ՄՏԿ-ում կենտրոնացված էին գյուղատնտ. արտադրության հիմնական մեքենաները (տրակտորներ, կոմբայններ են) և կոլտնտեսություններին սպասարկում էին պայմանագրային հիմունքներով: Առաջին մեքենատրակտորային կայանը կազմակերպվել է 1928-ին, Օդեսայի մարզում (ՀՍՍՀ-ում՝ 1929-ին, Հոկտեմբերյանի շրջանում): ՄՏԿ վճռական դեր են խաղացել գյուղի սոցիալիստական վերակառուցման, կոլտնտեսային կարգի, ինչպես նաև բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի ամրապնդման և այլ խնդիրներում: 1958-ին դրանք վերակազմավորվեցին նորոգման տեխ. կայանների (ՆՏԿ), իսկ տեխ. բոլոր միջոցները (շուրջ 32 մլրդ ռ. արժեքով) վաճառվեցին կոլտնտեսություններին: Նույն թվականին ՆՏԿ-ները վերածվեցին «Գյուղտեխնիկա» (1978-ից՝ Գյուղատնտեսության արտադրատեխնիկական ապահովման պետական կոմիտե) շրջանային միավորումների:

ՄՏԿ-ների կազմակերպման ՍՍՀՄ փորձը օգտագործել են սոցիալիստական մի շարք երկրներ: Տես նաև *Գյուղատնտեսության մեքենայացում*:

*Մ. Շմավոնյան*



**ՄԵՔՍԻԿԱ** (Méjico, México), Մեքսիկայի Միացյալ Նահանգներ (Estados Unidos Mexicanos)

Բովանդակությունը



## I. Ընդհանուր տեղեկություններ

Մ. պետություն է Հյուսիսային Ամերիկայի հվ-արմ. մասում: Սահմանակից է ԱՄՆ-ին, Գվատեմալային և Բելիզին: Արմ-ում և հվ-ում ողողվում է Խաղաղ, արլ-ում՝ Ատլանտյան օվկիանոսների ջրերով: Տարածությունը 1958,2 հզ. *կմ*² է, բն.՝ 66,94 մլն (1978): Մայրաքաղաքը՝ Մեխիկո: Վարչականորեն բաժանվում է 31 նահանգի և 1 ֆեդերալ օկրուգի:

Քարտեզները տես 6-րդ հատորի 473-րդ էջից առաջ՝ ներդիրում:

## II. Պետական կարգը

Մ. ֆեդերատիվ հանրապետություն է: Գործող սահմանադրությունն ընդունվել է 1917-ին: Պետության և կառավարության գլուխը պրեզիդենտն է, որն ունի լայն լիազորություններ՝ օրենսդրական նախաձեռնության իրավունք, նշանակում և ազատում է պետ. բարձրաստիճան պաշտոնյաներին, նահանգապետներին, հրապարակում օրենքներ են: Օրենսդրական իշխանության բարձրագույն մարմինը երկպալատ (դեպուտատների պալատ և սենատ) պառլամենտն է (Ազգային կոնգրես): Կառավարությունը կազմում են մինիստրները, գլխավոր դատախազը և 4 դեպարտամենտների ղեկավարները: Ընտրական իրավունքից օգտվում են 18 տարին լրացրած քաղաքացիները: Յուրաքանչյուր նահանգ ունի իր սահմանադրությունն ու միապալատ կոնգրեսը (Օրենսդրական ժողով): Քաղաքներում տեղական ինքնավարության մարմինները մունիցիպալ խորհուրդներն են: Մ-ի դատական համակար-

Վարչական բաժանումը

| Վարչական միավորը | Տարածությունը, հզ. *կմ*$^2$ | Բնակչությունը, հզ. մարդ (1970) | Վարչական կենտրոնը |
|---|---|---|---|
| Ֆեդերալ օկրուգ | 1,5 | 6874,2 | Մեխիկո (México) |
| Նահանգներ | | | |
| Ագուասկալիենտես (Aguascalientes) | 5,6 | 338,1 | Ագուասկալիենտես (Aguascalientes) |
| Գերերո (Guerrero) | 63,8 | 1597,4 | Չիլպանսինգո (Chilpancingo) |
| Գուանախուատո (Guanajuato) | 30,6 | 2270,4 | Գուանախուատո (Guanajuato) |
| Դուրանգո (Durango) | 119,6 | 939,2 | Դուրանգո (Durango) |
| Խալիսկո (Jalisco) | 80,1 | 3296,6 | Գվադալախարա (Guadalajara) |
| Կամպեչե (Campeche) | 56,1 | 251,5 | Կամպեչե (Campeche) |
| Կոաուիլա (Coahuila) | 151,6 | 1114,9 | Սալտիլիո (Saltillo) |
| Կոլիմա (Colima) | 5,5 | 241,1 | Կոլիմա (Colima) |
| Հիդալգո (Hidalgo) | 21,0 | 1193,8 | Պաչուկա (Pachuca) |
| Մեխիկո (México) | 21,5 | 3833,2 | Տոլուկա (Toluca) |
| Միչոական (Michoacán) | 59,9 | 2324,2 | Մորելիա (Morelia) |
| Մորելոս (Morelos) | 4,9 | 616,1 | Կուերնավակա (Cuernavaca) |
| Յուկատան (Yucatán) | 43,4 | 758,3 | Մերիդա (Mérida) |
| Նայարիտ (Nayarit) | 27,6 | 544,0 | Տեպիկ (Tepic) |
| Ներքին Կալիֆոռնիա (Baja California) | 70,1 | 870,4 | Մեխիկալի (Mexicali) |
| Ներքին Կալիֆոռնիա (Հարավային) (Baja California) | 73,7 | 128,0 | Լա Պաս (La Paz) |
| Նուևո Լեոն (Nuevo León) | 64,6 | 1694,7 | Մոնթերեյ (Monterrey) |
| Չիապաս (Chiapas) | 73,9 | 1569,0 | Տուստլա Գուտիերես (Tuxtla Gutiérrez) |
| Չիուաուա (Chihuahua) | 247,1 | 1612,5 | Չիուաուա (Chihuahua) |
| Պուեբլա (Puebla) | 33,9 | 2508,2 | Պուեբլա (Puebla) |
| Սակատեկաս (Zacatecas) | 75,0 | 951,5 | Սակատեկաս (Zacatecas) |
| Սան Լուիս Պոթոսի (San Luis Potosi) | 62,8 | 1282,0 | Սան Լուիս Պոթոսի (San Luis Potosi) |
| Սինալոա (Sinaloa) | 58,1 | 1266,5 | Կուլիական (Culiacán) |
| Սոնորա (Sonora) | 184,9 | 1098,7 | Էրմոսիլիո (Hermosillo) |
| Վերակրուս (Veracruz) | 72,8 | 3815,4 | Խալապա (Jalapa) |
| Տաբասկո (Tabasco) | 24,7 | 768,4 | Վիլիա Էրմոսա (Villa Hermosa) |
| Տամաուլիպաս (Tamaulipas) | 79,8 | 1456,8 | Սյուդադ Վիկտորիա (Ciudad Victoria) |
| Տլասկալա (Tlaxcala) | 3,9 | 420,6 | Տլասկալա (Tlaxcala) |
| Քերետարո (Querétaro) | 11,8 | 485,5 | Քերետարո (Querétaro) |
| Քինտանա Ռոո (Quintana Roo) | 42,0 | 88,1 | Չետումալ (Chetumal) |
| Օախակա (Oaxaca) | 95,4 | 2015,4 | Օախակա (Oaxaca) |

զը կազմում են ֆեդերալ դատարանները (գերագույն, օկրուգային և շրջանային) և նահանգային դատարանները (գերագույն, առաջին ատյանի, մունիցիպալ):

**III. Բնությունը**

Մ. գտնվում է Հյուսիսային Ամերիկայի Կորդիլիերաների հվ. մասում և մասամբ Կենտրոնական Ամերիկայի Կորդիլիերաներում: Ափերը մեծ մասամբ ցածրադիր են, տեղ-տեղ՝ ծովալճակային: Արմ-ում ցամաքի մեջ է մխրճվում Կալիֆոռնիայի ծոցը:

**Ռելիեֆը**: Մ-ի տարածքի մեծ մասը զբաղեցնող *Մեքսիկական բարձրավանդակը* եզրավորված է Արևելյան Սիեռա Մադրե, Արևմտյան Սիեռա Մադրե և գործող (Օրիսաբա, 5700 *մ*, Պոպոկատեպետլ, 5452 *մ* ևն) ու հանգած հրաբուխներով, ընդլայնական Հրաբխային Սիեռա լեռնաշղթաներով: Հս-արմ-ում լեռնային մակերևույթով Կալիֆոռնիա թերակղզին է (բարձրությունը՝ 800—1000 *մ*, առավելագույնը՝ 3078 *մ*): Երկրի հվ-ում գտնվող Չիապաս լեռնային մարզն ու Հարավային Սիեռա Մադրե լեռնաշղթան Մեքսիկական բարձրավանդակից բաժանվում են Բալսաս գետի իջվածքով: Հվ-արլ-ում Յուկատան թերակղզին է: Տեհուանտեպեկ պարանոցի մոտ լեռները ցածրանում են և ունեն մինչև 300 *մ* բարձրություն: Հվ-արլ-ում Մեքսիկական ծոցին հարող առափնյա դաշտավայրը գրավում է համարյա ամբողջ Յուկատան թերակղզին:

**Երկրաբանական կառուցվածքը և օգտակար հանածոները**: Մ-ի տարածքի մեծ մասը գտնվում է Հյուսիսային Ամերիկայի Կորդիլիերաների ծալքավոր գոտում: Արլ. ծովափը և Յուկատան թերակղզին պալեոզոյան ծալքավորության հիմքով երիտասարդ պլատֆորմի մասն են՝ ծածկված մեզոզոյի, պալեոգենի ու նեոգեն-անթրոպոգենի նստվածքներով: Արևմտյան և Հարավային Սիեռա Մադրեները կազմված են մինչքեմբրյան և պալեոզոյան բյուրեղային ու մետամորֆային ապարներից: Մեքսիկական բարձրավանդակը ծածկված է օլիգոցենի և միոցենի տուֆալավային ծածկույթով: Ընդլայնական Հրաբխային Սիեռայի երկայնքով ձգվում է խոշոր բեկվածքների գոտա, որի հետ կապված են գործող հրաբուխները: Կորդիլիերաների ծալքավոր կառուցվածքներն առաջացել են ալպյան ծալքավորության ընթացքում, Կալիֆոռնիա թերակղզու հվ. մասը՝ նեոգենում: Մ. հարուստ է նավթի, գազի (Մեքսիկական ծոցի նավթագազաբեր ավազան) և գունավոր մետաղների (Մեքսիկական բարձրավանդակ, Արևմտյան, Արևելյան և Հարավային Սիեռա Մադրեներ) հանքավայրերով: Հս-արլ-ում կան քարածխի, երկաթի, ուրանի, ծծմբի և այլ հանքավայրեր:

**Կլիման**: Մ-ի մեծ մասի կլիման արևադարձային է, հս-ում՝ մերձարևադարձային: Հունվարի միջին ջերմաստիճանը հս-արմ-ում 10°C է, հվ-ում՝ 25°C, հուլիսինը՝ Մեքսիկական բարձրավանդակի հս-ում 15°C, Կալիֆոռնիայի ափամերձ շրջաններում՝ 30°C: Մեքսիկական բարձրավանդակի հս-ում պատահում են մինչև —20°C սառնամանիքներ: Տարեկան տեղումները հս-ում 100—200 *մմ* են, հվ. լեռների հողմակողմ լանջերին՝ 2000—3000 *մմ*:

**Ներքին ջրերը**: Հվ-արլ-ում գետային ցանցը խիտ է, գետերը կարճ են, արագահոս և ունեն էներգիայի մեծ պաշարներ: Հս-արմ-ում գետերը երկար են, սակավաջուր և օգտագործվում են ոռոգման համար: Մեքսիկական բարձրավանդակի ներքին մասերում և կրաքարերից կազմված Յուկատան թերակղզում մակերեսային հոսք չկա: Խոշոր գետերից են ԱՄՆ-ի հետ սահմանային Ռիո Գրանդեն (Ռիո Բրավո դել Նորտե)՝ Կոնչոս վտակով, Լերման, Բալսասը, Գրիխալվա-Ուսումասինտա գետային համակարգը: Խոշոր լիճը Չապալան է:

**Հողերը, բուսական և կենդանական աշխարհը**: Հս-արմ-ում տարածված են գորշ և անապատային հողերը, լեռնային շրջանների մեծ մասում՝ կարմրահողերը, գորշդարչնագույն, դարչնագույն և գորշ լեռնաանտառային հողերը, դաշտավայրերում՝ կարմրահողերը, կարմրագորշ և ճահճային հողերը: Բուսածածկույթը բազմազան է, աճում է բարձրակարգ բույսերի մոտ 12 հզ. տեսակ (2/3-ը՝ էնդեմիկ): Մեքսիկական բարձրավանդակի հս. մասում գերակշռում է անապատային և կիսաանապատային, հվ. մասում և ծովափնյա դաշտավայրերում՝ սավաննային բուսականությունը, լեռներում՝ լայնատերև և խառն անտառները, երկրի հվ-ում և հվ-արլ-ում՝ արևադարձային անտառները:

Կենդանական աշխարհը բազմազան է: Անապատներում և կիսաանապատներում տարածված են կրծողները, լեռնային անտառներում՝ սև արջը, ջրարջը, կարմիր լուսանը, պուման, սավաննաներում՝ եղջերուն, մրջնակերը, արևադարձային անտառներում՝ կապիկներ, գետակինճը, ամերիկյան հովազը: Ստեղծվել են մի շարք ազգային պարկեր:

**IV. Բնակչությունը**

Մ-ի հիմնական բնակիչները *մեքսիկացիներն* են: Բնիկ ժողովուրդները՝ հնդկացիները (*ացտեկներ*, *մայաներ*, հուաստեկներ և այլք) մասամբ պահպանում են իրենց լեզուն ու մշակութային տարանջատվածությունը (ապրում են էթնիկական առանձին տարածքներում): Կան նաև եվրոպացիներ (իսպանացիներ, բասկեր, գերմանացիներ, ֆրանսիացիներ, իտալացիներ և այլք): Պաշտոնական լեզուն *իսպաներենն* է, գերիշխող կրոնը՝ կաթոլիկությունը, պաշտոնական տոմարը՝ գրիգորյանը:

Մ. ամենամեծ իսպանալեզու երկիրն է աշխարհում: Բնակչության միջին խտությունը 1 *կմ*$^2$ վրա 34 մարդ է (1978): Խիտ են բնակեցված Մեքսիկական բարձրա-

վանդակը և ֆեդերալ օկրուգը: Քաղաքային բնակչությունը մոտ 60% է (1978): Խոշոր քաղաքներն են Մեխիկոն, Գվադալախարան, Մոնտերեյը, Լեոնը, Սյուդադ Խուարեսը:

**V. Պատմական ակնարկ**

Մ-ի տարածքում մարդկային բնակության հետքերը վերին քարի դարից են (20—15 հզ. տարի մ. թ. ա.): Հնագույն բնակիչները հնդկացիներն են (մայաներ, տոլտեկներ, ացտեկներ), որոնք ստեղծել են բարձր զարգացած քաղաքակրթություն: Ամերիկան նվաճելու ընթացքում իսպանացիները 1517-ին հասել են ծովափնյա շրջանները, 1519-ին Մ-ի տարածք են ներխուժել իսպանական կոնկիստադորները՝ Է. *Կորտեսի* գլխավորությամբ, 1521-ին գրավել ացտեկների մայրաքաղաք Տենոչտիտլանը (այժմ՝ Մեխիկո), իսկ XVI դ. վերջին հիմնականում ավարտել Մ-ի տարածքի նվաճումը և այն մտցրել 1535-ին ստեղծված Նոր Իսպանիա փոխարքայության կազմի մեջ: Բնակչության գերակշռող մասը կազմող հնդկացիների անխնա շահագործումը, հիվանդությունները, սովը պատճառ են դարձել մեծ թվով հնդկացիների մահացության: Աշխատուժի պակասը լրացնելու նպատակով Աֆրիկայից ներմուծվել են նեգր ստրուկներ: Իսպանական գաղութացման շրջանում Մ-ի սոցիալ-տնտեսական կառուցվածքին բնորոշ էր ֆեոդալական ճորտատիրական հարաբերությունների և պարտային ստրկության զուգորդումը: Գաղութարարների վարած տնտ. սահմանափակման քաղաքականությունն առաջ է բերել արհեստավորների, քաղաքային չքավորության, մանր և միջին հողատերերի, կրեոլ (իսպանական գաղութաբնակների սերունդները) կալվածատերերի մի մասի, հնդկացիների դժգոհությունը, որն արտահայտվել է բազմաթիվ ապստամբություններով (մասնավորապես, 1625-ին, 1660-ին, 1761-ին, 1767-ին): Միաժամանակ, տնտեսության աստիճանական զարգացումը, վարձու աշխատանքի կիրառումը նպաստել են կապիտալիստական հարաբերությունների ձևավորմանը: Մ-ի գաղութացման ընթացքում էթնիկական տարբեր տարրերի (եվրոպական ծագում ունեցողներ, հնդկացիներ, նեգրեր) միաձուլումը, որը հանգեցրեց բնակչության լեզվական և կրոնական ընդհանրության, ներքին շուկայի կազմավորումը, ազգային ինքնագիտակցության արթնացումը XIX դ. սկզբին նախադրյալներ են ստեղծել մեքսիկական ազգի ձևավորման համար:

Հասարակական տարբեր խավերի դժգոհությունը իսպանական գաղութային վարչակարգից XIX դ. սկզբին վերածվեց ազատագրական հուժկու շարժման, որն Իսպանիայի դեմ նրա գաղութների անկախության պատերազմի բաղկացուցիչ մասն էր (տես *Իսպանական գաղութների անկախության պատերազմ Ամերիկայում 1810—1826*): 1810-ի սեպտ. 16-ին Մ-ում բռնկեց ժող. ապստամբություն, որը գլխավորեց Մ. *Հիդալգոն*: Կրեոլ կալվածատերերի և առևտրականների, աստիճանավորների ու սպաների զգալի մասը, վախենալով շարժման հակաֆեոդալական բնույթից, անցավ գաղութարարների կողմը: 1811-ի սկզբին հեղափոխական բանակը պարտվեց: Ազատագրական պայքարը գլխավորեց Մ. *Մորելոսը*, որի նախաձեռնությամբ հրավիրված (1813) Ազգային կոնգրեսն ընդունեց Իսպանիայից Մ-ի անկախության դեկլարացիա: Սակայն գաղութարարները ճնշեցին ապստամբներին:

1820—23-ի հեղափոխությունն Իսպանիայում, Հարավային Ամերիկայի իսպանական գաղութներում տեղի հայրենասերների հաջողությունները առաջ բերեցին ազգային-ազատագրական պայքարի նոր վերելք Մ-ում: 1821-ին խոշոր կալվածատերերի ու առևտրականների, բարձր հոգևորականության և զինվորական վերնախավի ներկայացուցիչ Ա. Իտուրբիդեի բանակը գրավեց Մեխիկոն, որտեղ սեպտ. 28-ին հռչակվեց Մ-ի անկախությունը Իսպանիայից: 1822-ի մայիսին Իտուրբիդեն իրեն հռչակեց կայսր, սակայն 1823-ի մարտին հանրապետական կարգի կողմնակիցները տապալեցին նրան: 1824-ի հոկտեմբերին ընդունված սահմանադրությամբ Մ. հռչակվեց հանրապետություն, եկեղեցին զրկվեց ժող. կրթության ասպարեզում ունեցած մենաշնորհից, վերացվեց գլխահարկը, սահմանվեց բոլոր քաղաքացիների հավասարություն օրենքի առջև ևն:

Գաղութային ճնշումից ազատագրված Մ-ում սկսեց զարգանալ տնտեսությունը: 1820-ական թթ. Մ. դարձավ օտարերկրյա տերությունների տնտ. էքսպանսիայի օբյեկտ: Տնտեսության տարբեր ոլորտներ ներթափանցեց անգլ., հյուսիս-ամերիկյան և ֆրանս. կապիտալը: Իշխանության համար պայքարը տարբեր խմբավորումների միջև անկայուն էր դարձնում քաղ. վիճակը երկրում: 1833-ին իշխանության գլուխ անցած Ա. Սանտա Աննան վերացրեց 1824-ի սահմանադրությունը և 1834-ին հաստատեց դիկտատուրա: ԱՄՆ, օգտվելով երկրի ներքին անկայուն վիճակից, սկսեց Տեքսասի գաղութացումը, որը վերջնականապես զավթեց 1845-ին: 1846-ին ԱՄՆ-ի կառավարությունը պատերազմ սանձազերծեց Մ-ի դեմ (1846—48), որի հետևանքով Մ. կորցրեց իր տարածքի բնական ռեսուրսներով հարուստ կեսից ավելին: 1853-ին վերստին դիկտատուրա հաստատած Սանտա Աննան ԱՄՆ-ի պահանջով 10 մլն դոլլարով նրան զիջեց ևս 120 հզ. *կմ²* տարածք: Սանտա Աննայի հակաժողովրդական քաղաքականությունն առաջացրեց հասարակության լայն խավերի դժգոհությունը: 1854-ին Մ-ի հվ-ում բռնկված ապստամբությունը վերաճեց բուրժ. հեղափոխության, որի ընթացքում իշխանության գլուխ անցավ Ի. Կոմոնֆորտի լիբերալ կառավարությունը, ընդունվեց նոր սահմանադրություն (1857): Սակայն 1857-ի վերջին խռովություն բարձրացրին կղերա-պահպանողականները և տապալեցին Ի. Կոմոնֆորտի կառավարությունը: Ծավալվեց քաղաքացիական պատերազմ կղերա-պահպանողականների և ժող. զանգվածների աջակցությունը վայելող լիբերալների միջև, որն ավարտվեց վերջինների հաղթանակով: Բ. *Խուարեսի* գլխավորած լիբերալների կառավարությունը հրապարակեց առաջադիմական օրենքներ: 1861-ի վերջին —1862-ի սկզբին հետադիմության օգնությամբ հասան անգլ., ֆրանս. և իսպանական զորքերը (տես *Մեքսիկական արշավանք 1861—1867*), սակայն 1867-ին հարկադրված հեռացան երկրից:

XIX դ. վերջին պրեզիդենտ Պ. Դիասի հաստատած կղերա-կալվածատիրական դիկտատուրան, ֆեոդալական մնացուկների պահպանումը, օտարերկրյա, հիմնականում հյուսիս-ամերիկյան, կապիտալի ներթափանցումը Մ. (որոնք արգելակում էին կապիտալիզմի զարգացումը և ազգային բուրժուազիայի ու պրոլետարիատի աճը) XX դ. սկզբին ստեղծեցին հեղափոխական իրադրություն: 1910-ի նոյեմբերին սկսվեց բուրժուա-դեմոկրատական հեղափոխություն (տես *Մեքսիկական հեղափոխություն 1910—1917*), 1911-ի մայիսին տապալվեց Պ. Դիասի դիկտատուրան: Իշխանության գլուխ անցան բուրժուազիան և լիբերալ կալվածատերերը՝ Ֆ. Մադերոյի գլխավորությամբ: 1913-ին ԱՄՆ-ի օգնությամբ տեղի ունեցավ հակահեղափոխական հեղաշրջում, հաստատվեց Վ. Ուերտայի դիկտատուրան: Երկրում սկսվեց գյուղացիական զանգվածային շարժում՝ Ֆ. Վիլյայի և Է. Սապատայի գլխավորությամբ: Ուերտայի դեմ ելան նաև ազգային բուրժուազիան ու լիբերալ կալվածատերերը՝ Վ. *Կառանսայի* գլխավորությամբ: Օգտվելով Մ-ի դժվարին կացությունից, 1914-ին և 1916-ին Մ. ներխուժեցին ԱՄՆ-ի զորքերը, սակայն հակաիմպերիալիստական շարժումը հարկադրեց նրանց հեռանալ երկրից: 1914-ի հուլիսին Ուերտայի դիկտատուրան տապալվեց: Քաղաքացիական պատերազմ սկսվեց բուրժուա-կալվածատիրական բլոկի և հեղափոխական գյուղացիության միջև, որն ավարտվեց գյուղացիական բանակի պարտությամբ: 1917-ի փետր. 5-ին ընդունվեց իր ժամանակի համար առաջադիմական սահմանադրություն, որը եզրափակեց 1910—17-ի հեղափոխությունը:

Հեղափոխությունը թուլացրեց խոշոր կալվածատերերի և եկեղեցու դիրքերը, սահմանափակեց օտարերկրյա կապիտալի ներթափանցումը, նպաստեց կապիտալիստական հարաբերությունների զարգացմանը, առաջադիմական վերափոխումների (աշխատանքային օրենսդրություն, ագրարային ռեֆորմ) անցկացմանը: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ազդեցությամբ Մ-ում ուժեղացավ ժող. պայքարը հանուն սահմանադրությամբ նախատեսված վերափոխումների իրագործման, աճեց գյուղացիական և բանվորական շարժումը: 1919-ին հիմնվեց *Մեքսիկայի կոմունիստական կուսակցությունը* (*ՄԿԿ*): 1920-ական թթ. Մ-ի կառավարությունը վարում էր (թեև անհետևողական) ներքին և արտաքին առաջադիմական քաղաքականություն: Մասնավորապես, 1924-ին Մ.՝ Ամերիկայի երկրներից առաջինը, դիվանագիտական հարաբերություններ հաստատեց ՍՍՀՄ-ի հետ: Սակայն օտարերկրյա իմպերիալիզմի աջակցությունը վայելող հետադիմական ուժերի ճնշման տակ 1920-ական թթ. վերջին —30-ական թթ. սկզբին Մ-ի կառավարությունը փոխեց իր քաղաքականությունը. ձգձգվում էր ագրարային ռե-

ֆորմի իրագործումը, հալածվում էին առաջադիմական կազմակերպությունները ևն: 1929-ին արգելվեց ՄԿԿ: 1930-ին Մ. խզեց դիվանագիտական հարաբերությունները ՍՍՀՄ-ի հետ: Զանգվածային շարժման վերելքի պայմաններում 1934-ին պրեզիդենտ ընտրվեց ազգային-հեղափոխական կուսակցության (ԱՀԿ, ստեղծվել էր 1929-ին) արմատական թևի ներկայացուցիչ Լ. Կարդենաս ի դել Ռիոն (1934—40), որի կառավարությունն անցկացրեց հակաֆեոդալական և հակաիմպերիալիստական բնույթի կարևոր վերափոխումներ: Իրականացնելով ագրարային ռեֆորմը՝ կառավարությունը գյուղացիներին բաժանեց 18 մլն *հա* հող՝ լուրջ հարված հասցնելով խոշոր հողատիրությանը: Վերականգնվեցին դեմոկրատական ազատությունները, ընդհատակից դուրս եկավ ՄԿԿ: 1936-ին մի շարք արհմիութենական կազմակերպություններ միավորվեցին Մ-ի աշխատավորների կոնֆեդերացիայի մեջ: Կառավարող ԱՀԿ վերակազմվեց մեքսիկական հեղափոխության կուսակցության [1946-ին վերանվանվեց ինստիտուցիոն-հեղափոխական կուսակցություն (ԻՀԿ)]: 1937-ին մասնակիորեն ազգայնացվեցին ամերիկյան և անգլ. կապիտալին պատկանող երկաթուղիները, 1938-ին՝ անգլ. և ամերիկյան նավթային ընկերությունների ձեռնարկությունները: Շարժում ծավալվեց անգրագիտության վերացման համար, ընդլայնվեց նոր դպրոցների շինարարություն ևն:

Երկրորդ համաշխարհային պատերազմի (1939—45) սկզբին Մ-ի կառավարությունը հայտարարեց իր չեզոքության մասին, բայց 1941-ի դեկտեմբերին խզեց դիվանագիտական հարաբերությունները Գերմանիայի, Իտալիայի և Ճապոնիայի հետ, իսկ 1942-ի մայիսին պատերազմ հայտարարեց նրանց: 1942-ի նոյեմբերին վերականգնվեցին դիվանագիտական հարաբերությունները Մ-ի և ՍՍՀՄ-ի միջև:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո շարունակվեց տնտ. վերելքը, տնտեսության մեջ լայն մուտք ունեցավ օտարերկրյա կապիտալը: Պրեզիդենտ Ա. Ռուիս Կորտինեսի կառավարությունը (1952—58) անցկացրեց առաջադիմական միջոցառումներ, 1953-ին կանայք ստացան տղամարդկանց հավասար քաղ. իրավունքներ: Միջազգային ասպարեզում Մ. սկսեց վարել ինքնուրույն քաղաքականություն: 1958-ին հանդես եկավ Ամերիկյան պետությունների կազմակերպության (ԱՊԿ) և ՆԱՏՕ-ի միջև կոնտակտների դեմ: 1950-ական թթ. վերջին —60-ական թթ. Մ-ի կառավարող շրջանների քաղաքականությունը հակասական էր. կառավարությունը, դեմոկրատական ազատությունների սահմանափակման, առաջադիմական կազմակերպությունների ու գործիչների հալածանքներին զուգընթաց, իրականացրեց արդ. ձեռնարկություններն ազգայնացնելու քաղաքականություն, հրաժարվեց աջակցել ԱՄՆ-ի և ԱՊԿ-ի հակակուբայական գործողություններին: ԱՄՆ-ից տնտ. կախվածությունը թուլացնելու նպատակով Մ. առևտրական սերտ կապեր հաստատեց Ֆրանսիայի, ԳՖՀ-ի և Եվրոպայի կապիտալիստական այլ պետությունների հետ: 1970-ին իշխանության գլուխ անցած Լ. Էչևեռիա Ալվարեսի կառավարությունը (1970—76), ձգտելով բարելավել երկրի տնտ. և քաղ. դրությունը, ընդունեց ագրարային ռեֆորմի (1971), ընտրական (1972) նոր օրենքներ, ստեղծեց բանվորների համար բնակարանային շինարարության ֆոնդ, սահմանեց պետ. ծառայողների 5-օրյա աշխատանքային շաբաթ: Ընդլայնվեցին առևտրական հարաբերությունները Արևմտյան Եվրոպայի, Ճապոնիայի, լատինաամերիկյան մի շարք երկրների հետ: Միջոցներ ձեռնարկվեցին ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների հետ հարաբերությունները զարգացնելու ուղղությամբ: 1975-ին Մոսկվայում համաձայնագիր կնքվեց ՏՓԽ-ի երկրների հետ Մ-ի համագործակցության վերաբերյալ:

1976-ի դեկտեմբերին պրեզիդենտ դարձավ Խ. Լոպես Պորտիլյոն, որի կառավարությունն ազգայնացրեց մի շարք ձեռնարկություններ, արտաքին քաղաքականության ասպարեզում նա վարում է դրական չեզոքություն, պաշտպանում պետությունների ինքնորոշման իրավունքը և ներքին գործերին չմիջամտելու սկզբունքը, հանդես է գալիս միջազգային հարցերի խաղաղ կարգավորման օգտին: Մ. պայքարում է լատինաամերիկյան միասնության ամրապնդման համար՝ ընդդեմ միջազգային կապիտալի էքսպանսիայի: 1970-ական թթ. Մ-ի և ՍՍՀՄ-ի միջև ստորագրվել են գիտ., տեխ., մշակութային, մարզական համաձայնագրեր:

**VI. Քաղաքական կուսակցությունները, արհմիությունները և հասարակական այլ կազմակերպություններ**

Ինստիտուցիոն-հեղափոխական կուսակցություն (ԻՀԿ), հիմնվել է 1929-ին, կառավարող կուսակցություն է (ազգային-ռեֆորմիստական, բուրժ.): Ազգային գործողության կուսակցություն (ԱԳԿ), ստեղծվել է 1939-ին, արտահայտում է արտասահմանյան կապիտալի հետ կապված խոշոր ֆինանսա-արդյունաբերական և առևտրական բուրժուազիայի շահերը: Մեքսիկական հեղափոխության ճշմարիտ կուսակցություն (ՄՀՃԿ), ստեղծվել է 1957-ին, միավորում է մեքսիկական հեղափոխության վետերաններին: Սոցիալիստական ժողովրդական կուսակցություն (ՍԺԿ), ստեղծվել է 1948-ին, միավորում է մանր բուրժուազիայի մի մասին, միջին խավերին, ուսանողությանը, բանվորների ու գյուղացիների որոշ խավերին:

Մեքսիկական կոմունիստական կուսակցություն (ՄԿԿ), հիմնվել է 1919-ին:

Մ-ի աշխատավորության կոնֆեդերացիա (ՄԱԿ), հիմնվել է 1936-ին, ունի մոտ 2 մլն անդամ, մտնում է ԱԱՄԿ-ի մեջ: Ազգային գյուղացիական կոնֆեդերացիա (ԱԳԿ), ստեղծվել է 1936-ին: Մ-ի բանվորների և գյուղացիների համընդհանուր միություն, ստեղծվել է 1949-ին, ունի մոտ 300 հզ. անդամ: Մեքսիկական ռեգիոնալ բանվորական կոնֆեդերացիա, ստեղծվել է 1918-ին, ունի մոտ 120 հզ. անդամ: Բանվորների և գյուղացիների հեղափոխական կոնֆեդերացիա, հիմնվել է 1918-ին, ունի մոտ 250 հզ. անդամ: Աշխատավորության հեղափոխական կոնֆեդերացիա, ստեղծվել է 1954-ին, ունի մոտ 10 հզ. անդամ: Պետական ծառայողների արհմիությունների ֆեդերացիա, ստեղծվել է 1938-ին, ունի մոտ 800 հզ. անդամ: Մեքսիկական կանանց ազգային միություն: «Մեքսիկա—ՍՍՀՄ» մշակութային կապերի ինստիտուտ:

**VII. Տնտեսա-աշխարհագրական ակնարկ**

Տնտ. առումով Մ. Լատինական Ամերիկայի առավել զարգացած երկրներից է: Տնտեսության մեջ կարևոր դեր ունի պետ. սեկտորը: Մեծ է նաև օտարերկրյա (հատկապես ամերիկյան) կապիտալի նշանակությունը: Զարգացող երկրների մեջ Մ. առանձնանում է մշակող արդյունաբերության և գյուղատնտեսության ապրանքային ճյուղերի բարձր մակարդակով, արտահանության բազմատեսակ կառուցվածքով և նոր շրջանների տնտ. յուրացման մեծ մասշտաբներով: Համաշխարհային կապիտալիստական տնտեսության մեջ Մ. գրավում է առաջին տեղերից մեկը արծաթի, ցինկի, կապարի, ծծմբի, սնդիկի հանույթով, հենեքենի մանրաթելի, շաքարի, բամբակի, սուրճի արտադրությամբ և արտահանությամբ:

**Արդյունաբերությունը**: Ծանր արդյունաբերության մեջ գերակշռում են խոշոր, թեթև և սննդի արդյունաբերության մեջ՝ մանր, երբեմն կիսատնայնագործական ձեռնարկությունները: Կարևորագույն ճյուղերն են հանքարդյունահանող, նավթավերամշակման և նավթաքիմիայի, թեթև և սննդի արդյունաբերությունը, գունավոր և սև մետալուրգիան: Հանքարդյունահանող արդյունաբերության մեջ առաջատար տեղ է գրավում նավթագազային արդյունաբերությունը, որի հիմնական շրջանը Մեքսիկական ծոցի ափամերձ գոտին է (Տամպիկո և Պոսա Ռիկա քաղաքների շրջակայքը): Նավթ արդյունահանվում է նաև ծովի հատակից: Գունավոր մետաղներ (արծաթ, ոսկի, սնդիկ, պղինձ, ցինկ, անագ ևն) արդյունահանում են Մեքսիկական բարձրավանդակում, երկաթ՝ Դուրանգոյի շրջանում, քարածուխ՝ Սաբինասում, բարձրորակ բնածին ծծումբ՝ Տեհուանտեպեկ պարանոցում: Արագորեն զարգանում է էներգետիկան: Խոշոր ՀԷԿ-երից են՝ Մալպասոն (I հերթի հզորությունը՝ 720 հզ. *կվտ*), Բալսաս գետի հովտում գտնվող Ինֆեռնիլիոն (հզորությունը՝ 627 հզ. *կվտ*): Կան խոշոր ՋԷԿ-եր: 1978-ին էլեկտրակայանների հաստատված հզորությունը կազմել է 12,2 մլն *կվտ*, այդ թվում ՀԷԿ-երինը՝ 4,3 մլն *կվտ*:

Մշակող արդյունաբերության առաջատար ճյուղերից են նավթավերամշակումը (մազութ, դիզելային վառելանյութ, բենզին ևն) և նավթաքիմիան (արհեստական մանրաթել, հանքա-

յին պարարտանյութեր)։ Գործարանները գտնվում են նավթի և գազի արդյունահանման շրջաններում և Մեխիկո ու Սալամանկա քաղաքներում։ Գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունները գտնվում են Մեխիկոյում (պղինձ), Վերակրուսում (ալյումին), սև մետալուրգիայինը՝ Մոնթերեյում, Մոնքլովայում և Մեխիկոյի շրջակայքում։ Լեռնամետալուրգիական խոշոր համալիր կա Բալսաս գետի հովտում։ Ավտոհավաքման գործարաններ կան Մեխիկոյում, Տոլուկայում, Պուեբլայում։ Մասնագիտացված մեքենաշինության պետ. կենտրոն է Իրոլոն (վագոնաշինություն, տեքստիլ սարքավորման և դիզելների արտադրություն)։ Զարգանում է ռադիոէլեկտրոնային արդյունաբերությունը։ Մեխիկոյի մոտակայքում կան ցեմենտի գործարաններ։ Տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունները կենտրոնացած են Պուեբլա—Օրիսաբա—Կորդովա գոտում, Մեխիկոյում ու Գվադալախարայում։ Վերջին երկու քաղաքներում է կենտրոնացած նաև սննդի արդյունաբերությունը։ Շաքարի արտադրության ձեռնարկությունները գտնվում են Մորելոս, Սինալոա, Վերակրուս, Տամաուլիպաս նահանգներում։

Արդյունաբերական կարևորագույն արտադրատեսակների արտադրությունը

| | 1950 | 1960 | 1978 |
|---|---|---|---|
| Էլեկտրաէներգիա, մլրդ *կվտ.ժ* | 4,4 | 10,8 | 55,2 |
| Նավթ, մլն *տ* | 10,4 | 14,2 | 61,0 |
| Բնական գազ, մլրդ *մ*³ | 1,8 | 9,7 | 25,6 |
| Արծաթ, *տ* | 1528 | 1385 | 1600 |
| Կապար, հզ. *տ* | 238 | 191 | 163 |
| Ցինկ*, հզ. *տ* | 224 | 244 | 245 |
| Պղինձ*, հզ. *տ* | 62 | 60 | 87 |
| Երկաթի հանքաքար, հզ. *տ* | 286 | 521 | 3500 |
| Ծծումբ, հզ. *տ* | 12** | 1302 | 1800 |
| Թուջ, հզ. *տ* | 227 | 784 | 5100 |
| Պողպատ, հզ. *տ* | 390 | 1474 | 6700 |
| Ցեմենտ, հզ. *տ* | 1479 | 3089 | 13900 |
| Ծծմբական թթու, հզ. *տ* | 43 | 249 | — |
| Մարդատար ավտոմեքենաներ, հզ. հատ | 10 | 24,8 | 247 |
| Շաքար, մլն *տ* | 0,7 | 1,5 | 3,0 |

* Արդյունահանումը մետաղի պարունակությամբ։ **1951։

**Գյուղատնտեսությունը**։ Հիմնականում բավարարում է բնակչության պահանջները և տալիս է արտահանության արժեքի 2/5-ը։ Բնորոշ է հողի կենտրոնացումը (հատկապես հս. անասնաբուծական նահանգներում) խոշոր տնտեսություններում և խիստ մանրատվածությունը գյուղացիական համայնքներում (էխիդոս) ու հնդկացիների բնակավայրերում։ Գյուղատնտեսության մեջ զբաղված է տնտեսապես ակտիվ բնակչության 40%-ից ավելին (1978)։ Ոռոգվող հողերից (4,3 մլն *հա*, հիմնական շրջաններն են Կոլորադո, Ռիո Բրավո, Ֆուերտե գետերի ստորին ավազանները, Կուլիական և Տորեոն քաղաքների շրջակայքը) ստացվում է բուսաբուծության արտադրանքի մոտ կեսը։ Երկրում կառուցվել է ավելի քան 400 ջրամբար (85 մլրդ *մ*³ ընդհանուր ջրատարողությամբ), օգտագործվում են նաև ստորերկրյա ջրերը։

Գյուղատնտեսական կարևոր կուլտուրաների բերքը (հզ. *տ*)

| | 1952—1956 | 1970 | 1978 |
|---|---|---|---|
| Եգիպտացորեն | 4057 | 9041 | 9616 |
| Լոբի | 365 | 925 | 940 |
| Ցորեն | 823 | 2216 | 2643 |
| Բրինձ (չզտված) | 183 | 402 | 397 |
| Բամբակենի (բամբակե թել) | 362 | 312 | 332 |
| Սրճենի | 85 | 183,9 | 270 |
| Շաքարեղեգ | 12795 | 33550 | 34500 |
| Հենեքեն | 103 | 141 | — |

Գյուղատնտեսության կառուցվածքում գերակշռում է բուսաբուծությունը։ Մշակում են եգիպտացորեն (ցանքատարածությունները զբաղեցնում են մինչև 3000 *մ* բարձրություններ, մեծ մասամբ չոռոգվող հողերում), ցորեն, բրինձ, սրճենի, բամբակենի, շաքարեղեգ, թելատու ագավա-հենեքեն։ Արտահանվող նշանակություն ունեն լոլիկը, գետնանուշը, վաղահաս բանջարային բույսերը, ցիտրուսայինները են։ Մեծանում է անասնապահության նշանակությունը։ Խոշոր քաղաքների շրջակայքում զարգանում է կաթնատու անասնապահությունը և թռչնաբուծությունը, Մեքսիկական բարձրավանդակում՝ ոչխարաբուծությունը։ 1978-ին Մ-ում կար 30,4 մլն գլուխ խոշոր, 88 մլն գլուխ մանր եղջերավոր անասուն, 14,9 մլն խոզ, 6,6 մլն ձի։

Անտառային տնտեսությունը զարգացած է Դուրանգո և Չիուաուա նահանգներում։ Հյուսիս-խաղաղօվկիանոսյան նահանգների առափնյա շրջաններում կա ձկնորսություն (0,8 մլն *տ* ձուկ և ծովամթերք, 1978) ու ձկան պահածոների արտադրություն։

**Տրանսպորտը**։ Երկաթուղիների երկարությունը 24,9 հզ. *կմ* է, ավտոճանապարհներինը՝ 200 հզ. *կմ*, խողովակաշարերինը՝ 11 հզ. *կմ* (1976)։ Զարգանում է օդային տրանսպորտը։ Խոշոր օդանավակայաններ կան Մեխիկո, Վերակրուս, Մերիդա, Մոնթերեյ քաղաքներում։ Ծովային առևտրական նավատորմի տոննաժը 1,08 մլն բրուտտո ռեգիստրային *տ* է (1976)։ Կարևոր նավահանգիստներ են Տամպիկոն, Վերակրուսը, Կոացակոալկոսը, Սալինա Կրուսը, Գուայմասը։

**Արտաքին առևտուրը**։ Արտաքին առևտրի հաշվեկշիռը բացասական է (1979-ին արտահանումը կազմել է 8,6 մլրդ դոլլար, ներմուծումը՝ 12,0 մլրդ դոլլար)։ Արտահանում է նավթ և նավթամթերք, հանքարդյունահանող արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի արտադրանք, ծծումբ, բամբակ, սուրճ, շաքար, անասուն, ներմուծում մեքենաներ, սարքավորում, տրանսպորտի միջոցներ։ Գլխավոր գործընկերներն են ԱՄՆ (արտահանման 71%-ը, ներմուծման 60%-ը), Լատինական Ամերիկայի, Արևմտյան Եվրոպայի երկրները, Ճապոնիան։ Տնտեսության համար կարևոր նշանակություն ունի տուրիզմը։

Դրամական միավորը պեսոն է։ 100 պեսո= 2,80 ռ. (1981)։

**VIII. Զինված ուժերը**

Մ-ի զինված ուժերը (95,5 հզ. մարդ, 1977), կազմված են ցամաքային զորքերից (72 հզ. մարդ), ռազմաօդային (մոտ 6 հզ. մարդ), ռազմածովային (17,5 հզ. մարդ) ուժերից և ազգային գվարդիայից։ Գերագույն գլխավոր հրամանատարը պրեզիդենտն է։ Ցամաքային զորքերի և ռազմաօդային ուժերի ղեկավարությունն իրականացնում է ազգային պաշտպանության մինիստրը, ռազմածովային ուժերինը՝ ծովային մինիստրը։ Համալրվում են վարձկաններով։ Ցամաքային զորքերը կազմված են մեքենայացված 1, հետևակային 1 բրիգադային խմբերից, 23 առանձին հեծելազնդերից են։ Ռազմաօդային ուժերն ունեն ավելի քան 105 մարտական ինքնաթիռ, ռազմածովային ուժերը՝ տարբեր նշանակության մոտ 80 նավ, ծովային ավիացիա (21 ինքնաթիռ, 9 ուղղաթիռ) և ծովային հետևակ։ Կա նաև 250-հազարանոց միլիցիա։

**IX. Բժշկա-աշխարհագրական բնութագիրը**

Առողջապահության համաշխարհային կազմակերպության տվյալներով 1970-ին ծնունդը կազմել է 1000 բնակչին 34,6, մահացությունը՝ 6,5, մանկական մահացությունը 1000 ողջ ծնվածին՝ 54,7։ Կյանքի միջին տևողությունը 64,5 տարի է։ Գերակշռում են վարակիչ և մակաբուծական հիվանդությունները. տարածված են դիզենտերիան, տիֆերը և պարատիֆերը, համաճարակային հեպատիտը, քութեշը, դիֆթերիան, կարմրուկը, կապույտ հազը, բրուցելոզը, տրախոման, գյուղական վայրերում՝ ճիճվային հիվանդությունները։ Ոչ վարակիչ հիվանդություններից առավել հաճախ հանդիպում են շաքարախտը, տեղաճարակային խպիպը, սիրտ-անոթային համակարգի հիվանդությունները և չարորակ նորագոյացությունները։

Մ-ում գերակշռում է բժշկ. ծառայության համակարգը։ 1974-ին երկրում գործել է 1575 հիվանդանոցային հիմնարկ՝ 67,3 հզ. մահճակալով (1000 բնակչին՝ 1,1 մահճակալ)։ Արտահիվանդանոցային օգնություն են կազմակերպում 672 պոլիկլինիկական բաժանմունքներ, 673 պոլիկլինիկաներ, 591 առողջապահական կենտրոն, 6 դիսպանսեր, 299 բուժկետ են։ 1970-ին աշխատել են 39,1 հզ. բժիշկ (1,3 հզ. բնակչին՝ 1 բժիշկ), 5,1 հզ. ատամնաբույժ և շուրջ 50 հզ. միջին բուժաշխատող։ Բժիշկներ են պատրաստում համալսարաններին կից բժշկ. 4 ֆակուլտետ և բժշկ. 16 դպրոց։ 1970-ին առողջապահության ծախսերը կազմել են պետ. բյուջեի 5,7%-ը։ Հռչակված են Ակապուլկո մերձծովյան կլիմայական, Կուեռնավակա, Օրիսաբա և Վերակրուս առողջարանները։

**X. Լուսավորությունը**

Մ-ում լուսավորության գործը ղեկավարում են ֆեդերալ ու նահանգների իշխանությունները և մունիցիպալիտետները։ Գործում են պետ. և մասնավոր (գլխավորապես միջնակարգ) ուս. հաստատություններ։ Դեռևս շարունակվում է կրոնական կազմակերպությունների ազդեցությունը երեխաների և երիտասարդության դաստիարակության վրա։ 4—6 տարեկան երեխաները դաստիարակվում են մանկա-

պարտեզներում: Համընդհանուր պարտադիր և անվճար է 6-ամյա տարրական կրթությունը: Գյուղական վայրերում գերակշռում է տարրական միակոմպլեկտ դպրոցը (ուս. տևողությունը՝ 3—4 տարի): Միջնակարգ դպրոցը 5-ամյա է, 2 աստիճանով (հանրակրթական կամ տեխ. միջանկյալ դպրոցներ, ուս. տևողությունը՝ 3 և 2 տարի): 6-ամյա տարրական դպրոցի բազայի վրա գործում են ուսումնարաններ (մանկավարժական, ինդուստրիալ, գյուղատնտ., գեղարվեստական): Մ. ունի 38 բուհ. խոշորագույններից են Ազգային ինքնավար համալսարանը (հիմնադրվել է 1551-ին) և Ազգային պոլիտեխնիկական ինստ-ը (1936, երկուսն էլ՝ Մեխիկոյում): Առավել խոշոր գրադարաններից է Ազգայինը (1883, ավելի քան 800 հզ. գիրք, Մեխիկոյում), թանգարաններից՝ Ժամանակակից արվեստի, Մարդաբանության ազգային, Պատմության ազգային, Մ-ի բուսական և կենդանական աշխարհի, Գեղանկարչության և քանդակագործության Սան Կարլոս պատկերասրահը (բոլորն էլ՝ Մեխիկոյում):

**XI. Գիտությունը և գիտական հիմնարկները**

***1. Բնական և տեխնիկական գիտությունները***

Հին շրջանում [մինչև իսպանական գաղութացումը (XVI դ.)] Մ-ի տարածքում բնիկ ժողովուրդների (հնդկացիներ) մեջ իրենց բնագիտական գիտելիքներով աչքի են ընկել մայաները: Նրանք օգտվել են հաշվարկման համակարգից, գաղափար են ունեցել զրոյի մասին: Մայաներն ստեղծել են արեգակնային օրացույց և թվականության համակարգ, մեծ ճշգրտությամբ հաշվել են արեգակնային տարվա ու լուսնային ամսվա տևողությունը, կանխորոշել Արեգակի և Լուսնի խավարումները: Նրանց հայտնի են եղել մոլորակները: Բավական բարձր մակարդակի է հասել բժշկությունը, հատկապես ախտորոշման, վիրաբուժության, դեղաբանության բնագավառում: Բուժական պրակտիկայում օգտագործվել են թմրամիջոցներ, ավելի քան 400 բույս:

Գաղութատիրության շրջանում (XVI դ.— XIX դ. սկիզբ) բնական գիտությունները զարգացել են հիմնականում եվրոպացի (գլխավորապես իսպանացի) գիտնականների շնորհիվ, որոնցից շատերը երկար ժամանակ ապրել են Մ-ում, զգալի ավանդ ներդրել երկրի բնության հետազոտման գործում և իրավամբ համարվում են մեքս. բնագիտության ներկայացուցիչներ: XVI դ. 1-ին կեսին հիմնվել են առաջին ուս. հաստատությունները՝ Սանտա Կրուս դպրոցը (1536), Մեխիկոյի համալսարանը (1551): XVII դ. մեքս. գիտության առավել խոշոր դեմքերից է աստղագիտությանը, աշխարհագրությանը, գեոդեզիային, քարտեզագրությանը, մայաների ու ացտեկների պատմությանը վերաբերող մի շարք աշխատությունների հեղինակ, Կեպլերի, Գալիլեյի, Դեկարտի գաղափարների պրոպագանդիստ, արքունական տիեզերագետ Կ. դե Սիգուենսա ի Գոնգորան: Գիտական կյանքը, որ XVII դ. սկզբից որոշ անկում էր ապրել, նորից աշխուժացել է միայն XVIII դ. 2-րդ կեսին՝ կապված Իսպանիայում էկոնոմիկայի և գիտության վերելքի և Մ-ում կապիտալիստական հարաբերությունների ձևավորման հետ: Այդ շրջանում են հիմնադրվել Վիրաբուժության թագավորական դպրոցը (1768), Բուսաբանական այգին (1788), Լեռնագործության թագավորական դպրոցը (1792) են: 1801-ին Ա. Մ. դել Ռիոն հայտնագործել է վանադիումը, որն անվանել է էրիտրոնիում: Շարունակվել են աշխարհագրական, աստղագիտա-գեոդեզիական, բուսաբանական և բժշկ. հետազոտությունները: XVIII—XIX դդ. սահմանագծին Մ-ում աշխատել է Ա. Հումբոլդտը, որը նպաստել է երիտասարդ մեքս. գիտության ներգրավմանը համաշխարհային բնագիտության համակարգի մեջ:

Անկախության համար մղված պայքարը, ազգային արդյունաբերության ստեղծումը նպաստել են գիտության զարգացմանը XIX դ.: Հիմնադրվել է Մ-ի բուսական և կենդանական աշխարհների թանգարան (1822), կազմվել բույսերի անվանացանկ («Բուսաբանական աղյուսակներ», 1825), ուսումնասիրվել են մշակովի բույսերի հիվանդությունները: 1889-ին կազմվել է Մ-ի օգտակար հանածոների քարտեզը: 1878-ին հիմնադրվել է Ազգային աստղադիտարանը (Ֆ. Դ. Կովառուբիասի ղեկավարությամբ), 1891-ին՝ Երկրաբանության ինստ-ը: XX դ. սկզբին, հատկապես 1910—17-ի բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունից հետո, գիտության զարգացումը նոր թափ է ստացել, ընդլայնվել են ֆիզմաթ և տեխ. գիտությունների բնագավառի հետազոտությունները, կազմակերպվել են նոր, մասնագիտացված գիտական կենտրոններ. այսուհանդերձ, առաջատար դերը պահպանել են կենսաբանությունը, բժշկությունը և երկրաբանությունը: Կենսաբանական հետազոտություններն ընդգրկում են մանրէաբանությունը, ճիճվաբանությունը, հիդրոկենսաբանությունը, միջատաբանությունը, ֆիզիոլոգիան, կենսաքիմիան, գենետիկան են (Ի. Օչոտերենա, Ռ. Լյամաս, Մ. Մարտինես և ուրիշներ): Արժեքավոր հետազոտություններ են կատարվել բժշկության մի շարք ճյուղերում՝ սրտաբանություն (Ի. Չավես, Ա. Ռոզենբլյութ), մաշկաբանություն (Ռ. Սիսերո, Գ. Էռիխոն), ակնաբուժություն (Ի. Օչոտերեն), նյարդավիրաբուժություն (Կ. Ռոբլես) են: Մ-ում ստացվել են ցորենի բարձր բերքատու սորտեր, որոնց տարածումը զարգացող երկրներում սկիզբ է դրել, այսպես կոչված, կանաչ հեղափոխությանը (Ն. Է. Բոռլոուգ, Խաղաղության Նոբելյան մրցանակ, 1970): Երկրի վերաբերյալ գիտությունների շարքում առավել նշանակալի են նավթի և գազի երկրաբանության, ուրանի հանքավայրերի հետախուզման բնագավառի աշխատանքները: Մեքսիկացի և ամերիկյան գիտնականների ջանքերով Մ-ում ստեղծվել է մաթեմատիկայի ազգային դպրոց, բացվել է Մաթեմատիկայի ինստ. (1942): Տեսական և փորձարարական ֆիզիկայի բնագավառի հետազոտությունները կենտրոնացված են Ֆիզիկայի ինստ-ում (1938) և Պոլիտեխնիկական ինստ-ի հետազոտական կենտրոնում, աստղաֆիզիկական աշխատանքները՝ Տոնանտսինտլայի աստղաֆիզիկայի ինստ-ում (1942): 1970-ից գործում է Մ-ի Ատոմային կենտրոնը՝ իր ռեակտորով, արագացուցիչով, հաշվողական կենտրոնով: Քիմ. հետազոտությունները տարվում են Քիմիայի ինստ-ում (1941) և արդ. լաբորատորիաներում: Կարևոր աշխատանքներ են կատարվում նաև արդ. էլեկտրոնիկայի և կիսահաղորդիչների, տեխ. կիբեռնետիկայի և կապի տեսության, կիրառական քիմիայի, նավթաքիմիայի, մետալուրգիայի, հիդրոէներգետիկայի և այլ բնագավառներում:

***2. Հասարակական գիտությունները***

**Փիլիսոփայությունը**: Մ-ում փիլ. և գիտական գիտելիքի սաղմերը առկա են եղել հնդկացիների մշակույթում: Նախագաղութացման շրջանում արդեն դիցաբանության շրջանակներում ձևավորվել են փիլ. պատկերացումներ և հասկացություններ: Այսպես, աշխարհի մասին ացտեկների ուսմունքում առաջ է քաշվել 4 նախատարրերի (հուր, ջուր, հող, քամի) գաղափարը, պայքարի հասկացությունը: Գաղութացման շրջանում բուն փիլ. հայացքները Մ-ում ձևավորվել են եվրոպական գաղափարախոսության (հատկապես սխոլաստիկայի) ազդեցությամբ: Մ-ի սոցիալ-տնտեսական և քաղ. զարգացմանը համապատասխան տարածվել են հումանիզմի (XVI—XVII դդ.), ֆրանս. լուսավորականության (անկախության համար պայքարի շրջանում), պոզիտիվիզմի (1854—60-ի բուրժ. հեղափոխությունից հետո) գաղափարները:

XIX դ. 1-ին կեսին Մ-ում շարունակվում էր սխոլաստիկայի և ռացիոնալիստական, մատերիալիստական գաղափարների պայքարը: XIX դ. 2-րդ կեսին մատերիալիստական և պոզիտիվիստական միտումներին հակադրվել է կաթոլիկական փիլիսոփայությունը: XIX—XX դդ. սահմանագծին պոզիտիվիզմը դառնում է տիրապետող ուսմունք, սկսում է տարածվել մատերիալիզմը (Ֆ. Էռնանդես, Է. Օ. Արագոն), հետազոտվում են Մ-ի փիլ. մտքի պատմությունը (Ա. Ռիվերա, Է. Տեխես): XIX դ. 70-ական թթ. տարածվում են մարքսիստական գաղափարները: XX դ. 1-ին կեսին պոզիտիվիզմին փոխարինում են ինտուիտիվիզմը, նեոկանտականությունը, էկզիստենցիալիզմը: Ուժեղանում է թոմիզմի ազդեցությունը: Այս շրջանի հայտնի իդեալիստ փիլիսոփաներն են Ա. Կասոն, Խ. Վասկոնսելոսը, Ս. Ռամոսը: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ևս Մ-ում տարածվել են բուրժ. փիլիսոփայության տարբեր հոսանքներ: 1963-ին Մ-ում տեղի է ունեցել XIII միջազգային փիլ. կոնգրեսը: Մ-ի մարքսիստները քննարկում են երկրի հասարակական զարգացման, բանվոր դասակարգի հեղափոխական շարժման և ազգային-ազատագրական պայքարի պրոբլեմները: Մ-ի հայտնի մարքսիստներից են Է. դե Գորտարին, Ա. Ս. Վասկեսը և ուրիշներ: Մ-ի մի շարք համալսարաններ ունեն փիլ. ֆակուլտետներ: Ազգային ինքնավար համալսարանին կից գործում են փիլ. ֆակուլտետը և փիլ. ուսումնասիրությունների ինստ-ը: Հրատարակվում են փիլ. ամսագրեր:

**Պատմագիտությունը:** Մ-ում պատմագիտությունը սաղմնավորվել է XVIII դ. վերջին, երբ երևան են եկել ճիզվիտ հայրեր Ֆ. Ալեգրեի, Ա. Կավոյի, Ֆ. Կլավիխերոյի պատմական առաջին աշխատությունները, ուր բարձր է գնահատվել հին հնդկացիների մշակույթը: XIX դ. 1-ին կեսին լույս են տեսել լիբերալ-բուրժուական պատմաբաններ Կ. Մ. Բուստամանտեի, Լ. դե Սավալայի, Խ. Մորայի աշխատությունները, որոնք հայրենասիրական դիրքերից լուսաբանել են 1810—24-ի անկախության պայքարը Մ-ում: Գաղութային վարչակարգն իդեալականացրած պահպանողական Լ. Ալամանի և նրա հետևորդների դեմ XIX դ. վերջին և XX դ. սկզբին հանդես են եկել արմատական ուղղության ներկայացուցիչներ Վ. Ռիվա Պալասիոն, Խ. Սարատեն, Ի. Մ. Ալտամիրանոն և ուրիշներ: XX դ. 20—30-ական թթ. ստեղծվեցին գիտական նոր հիմնարկներ և ընկերություններ՝ Պատմության և աշխարհագրության ազգային ակադեմիան (1925), Պատմության մեքս. ակադեմիան (1940) ևն: Պատմագիտության մեջ տիրապետում էր կղերա-պահպանողական ուղղությունը, որը մոտ էր Ալամանի հայացքներին (Տ. Էսկիվել Օբրեգոն, Ա. Կառենյո, Ռ. Գարսիա Գրանադոս և ուրիշներ): 1940-ական թթ. բարձրացավ պատմական հետազոտությունների գիտական մակարդակը: 1943-ին հիմնվեց Մեքսիկական պատմական ընկերությունը, իսկ 1946-ին, նրա հիմքի վրա՝ Մ-ի պատմության ուսումնասիրման միավորումը, 1949-ին՝ Պատմության ուսումնասիրման մեքս. ընկերությունը: 1950—60-ական թթ. հրատարակվեցին 1910—17-ի Մեքսիկական հեղափոխության պատմության բազմաթիվ փաստաթղթեր:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո զարգացավ Մ-ի պատմագիտության դեմոկրատական ուղղությունը, որը շարունակեց և խորացրեց XIX դ.— XX դ. սկզբի լիբերալ պատմաբանների լավագույն ավանդույթները: Նրա որոշ ներկայացուցիչներ մոտ են պատմության մատերիալիստական ըմբռնմանը: Սոցիալ-տնտեսական հարցերին են նվիրված Ա. Կուե Կանովասի, Լ. Չավես Օրոսկոյի և այլոց ուսումնասիրությունները: 1910—1917-ի Մեքսիկական հեղափոխության վերաբերյալ աշխատությունների մեջ առանձնանում են Ռ. Բլանկո Մոհենոյի, Խ. Ռոմերո Ֆլորեսի, Մ. Գոնսալես Ռամիրեսի և ուրիշների գրքերը: Մ-ում պատմության ուսումնասիրման և պատմական փաստաթղթերի ժողովման կարևոր կենտրոններ են Պատմության ազգային թանգարանը (1822), Ազգային գլխավոր արխիվը (1823), Ազգային գրադարանը (1833) ևն: Ազգային ինքնավար համալսարանին կից կան Պատմական հետազոտությունների ինստ., Հասարակական հետազոտությունների ինստ., Քաղաքական և հասարակական գիտությունների ազգային դպրոց: 1953-ին հիմնվել է Մեքսիկական հեղափոխության պատմության ուսումնասիրման ազգային ինստ-ը: Հրատարակվում են պատմական հանդեսներ, տարեգիրք:

**Տնտեսագիտությունը:** Որպես հայացքների ամբողջական համակարգ ձևավորվել է XIX դ. 1-ին կեսին: Առավել զարգացել է XX դ., առաջին տասնամյակներին ընդգրկել օտարերկրյա (հատկապես հս-ամերիկյան) մոնոպոլիաների ճնշման դեմ պայքարի, ֆեոդալիզմի մնացուկների վերացման, տնտ. զարգացման տեմպերի արագացման պրոբլեմները: Տնտեսագիտության մեջ 1960—70-ական թթ. կազմավորվել է երեք հիմնական ուղղություն: Առաջին ուղղության ներկայացուցիչները (Լ. Սոլիս, Դ. Իբառա, Վ. Լ. Ուրկիդի և ուրիշներ) մշակում են Ինստիտուցիոնհեղափոխական կուսակցության պաշտոնական տնտ. ուսմունքը: Նրանք կրում են *քեյնսականության* ու տնտ. զարգացման բուրժ. ժամանակակից տեսությունների խիստ ազդեցությունը և կողմ են լատինաամերիկյան զարգացման (կամ դեսառոլիզմի, < իսպ. desarrollo — զարգացում) տեսությանը: Էկոնոմիկայի արագ զարգացման համար կարևորում են օտարերկրյա կապիտալի կիրառումը, պետ. կապիտալիստական սեկտորի ընդլայնումը, տնտ. ծրագրավորումը, էկոնոմիկայի խառը սեկտորը՝ իշխող կապիտալիստական արտադրաեղանակի շրջանակներում: Երկրորդ, լիբերալ-դեմոկրատական ուղղության կողմնակիցներն իրենց հետազոտություններում ինչ-որ չափով բացահայտում են երկրի տնտ. զարգացման արատներն ու թերությունները, բայց դրանց վերացումը կապում են մասնակի բարենորոգումների ու կապիտալիստական կարգերի պահպանման հետ: Գյուղատնտեսության տեխ. կատարելագործումը, հողերի ոռոգումը համարում են ագրարային (Է. Պադիլիա Արագոն, Օ. Ֆլորես դե լա Պենյա, Ա. Բոնիլյա և ուրիշներ), իսկ կալվածատիրական լատիֆունդիաների վերացումը, օտարերկրյա կապիտալի ներհոսքի սահմանափակումը, էկոնոմիկայի պետ. սեկտորի ըստ ամենայնի զարգացումը՝ ընդհանուր տնտ. (Ռ. Ստավեն-Խագեն, Կ. Կարդենաս, Մ. Գոմես Ագիլերա և ուրիշներ) պրոբլեմների լուծման ուղի: Երրորդ, առաջադիմական ուղղության ներկայացուցիչները (Խ. Լուիս Սեսենյա, Ռ. Ռամիրես Գոմես, Ա. Ագիլար Մոնտեվերդե և ուրիշներ) հանդես են գալիս ամերիկյան մոնոպոլիաներից Մ-ի էկոնոմիկայի անկախության, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման, տնտ. խորը վերափոխումների պահանջներով: Նրանց աշխատություններում, թեև ոչ միշտ հետևողականորեն, օգտագործվում է մարքսիստական մեթոդաբանությունը: Վերջին տասնամյակների հետազոտություններում կարևոր տեղ են գրավում տնտեսության ու տնտեսագիտական մտքի զարգացման պատմությանը նվիրված աշխատությունները (Խ. Սիլվա Էրսոգ, Ա. Կուե Կանովաս, Խ. Ռեյես Էրոլես և ուրիշներ):

Տնտեսագիտության կենտրոններն են՝ համալսարանների, Ազգային պոլիտեխնիկական, Մոնթերեյի տեխնոլոգիայի ու բարձրագույն կրթության, Մ-ի տեխնոլոգիական ինքնավար ինստ-ների տնտեսագիտության ֆակուլտետները, Ազգային ինքնավար, ինչպես նաև Նուևո Լեոն նահանգի համալսարանին առընթեր տնտեսագիտական հետազոտությունների կենտրոնները: Լույս են տեսնում տնտեսագիտական պարբերականներ:

**3. Գիտական հիմնարկները**

1970-ական թթ. սկզբներին Մ-ում կար ավելի քան 200 գիտահետազոտական հիմնարկ: Պետ. առաջատար գիտահետազոտական կազմակերպություններն են. Ատոմային էներգիայի ազգային հանձնաժողովի գիտահետազոտական համալիրը (հիմնադրվել է 1956-ին, միավորում է 15 լաբորատորիա և ատոմային կենտրոնը), Տիեզերական տարածության յուրացման ազգային հանձնաժողովի հետազոտական կենտրոնը (1962, ունի հրթիռակայան և իոնոլորտային խոշոր կայան): Գյուղատնտեսության ազգային ԳՀԻ (1960), Գիտությունների ազգային (1884), Իրավաբանական գիտությունների (1889), Պատմության մեքս. (1940), Պատմության և աշխարհագրության ազգային (1925), Լեզվի մեքս., Բժշկության ազգային (1864) ակադեմիաները ևն: Խոշոր ԳՀԻ-ներ ունեն Ազգային ինքնավար համալսարանի (Մեխիկո, 20-ից ավելի) և Ազգային պոլիտեխնիկական ինստ-ի (10-ից ավելի) գիտահետազոտական կենտրոնները: Խոշորագույն անկախ գիտահետազոտական հիմնարկ է Տեխնոլոգիական հետազոտությունների մեքս. ինստ-ը (1950), որտեղ հետազոտություններ են կատարվում պետության և մասնավոր ֆիրմաների հետ կնքված պայմանագրերով: Միջազգային գիտահետազոտական կազմակերպություններից են Քիմիայի պանամերիկյան ինստ-ը, Ռեգիոնալ հաշվողական կենտրոնը, Ախտաբանական անատոմիայի հարցերի ռեգիոնալ ինֆորմացիոն կենտրոնը: Մ-ում կա (1973) 100-ից ավելի գիտական ընկերություն, որոնցից հնագույններն են՝ աշխարհագրության և վիճակագրության (1833), բնապատմության (1868), աստղագիտական (1902), երկրաբանական (1904) ևն: Մ. ավելի քան 30 միջազգային գիտական կազմակերպությունների անդամ է: 1968-ին ՍՍՀՄ-ի և Մ-ի միջև կնքվել է մշակութային և գիտական փոխանակության համաձայնագիր:

**XII. Մամուլը, ռադիոհաղորդումները, հեռուստատեսությունը**

Մ-ում լույս է տեսնում շուրջ 1600 պարբերական հրատարակություն: Առավել ազդեցիկ օրաթերթերից են՝ «Նասիոնալ» («El Nacional», 1929-ից, կառավարական), «Նովեդադես» («Novedades», 1936-ից), «Պրենսա» («La Prensa», 1928-ից), «Սոլ դե Մեխիկո» («El Sol de México», 1965-ից), «Էկսելսիոր» («Excelsior», 1917-ից), «Ուլտիմաս նոտիսիաս դե Էկսելսիոր» («Ultimas Noticias de Excelsior», 1936-ից), «Ունիվերսալ» («El Universal», 1916-ից), «Դիա» («El Dia», 1962-ից), «Վոս դե Մեխիկո» («La Voz de México», 1924-ից, Մ-ի կոմկուսի օրգանը): Հիմնական հանդեսներից են՝ «Պոլեմիկա» («Polémica», 1969-ից), «Նասիոն» («La Nación», 1941-ից), «Սիեմպրե» («Siempre», 1953-ից), Մ-ի կոմկուսի օրգաններ «Օպոսիսիոն» («La Oposición», 1970-ից), «Նուեվա էպոկա» («La Nueva Epoca»): Ինֆորմացիոն գործակալություններն են՝ Ինֆորմեկս (1960-ից), ԱՄԵԿՍ (1968-ից, երկուսն էլ բաժնետիրական ընկերություններ են), ՆՈՏԻՄԵԿՍ (1968-ից,

կառավարական ինֆորմացիոն գործակալություն): Կապի կառավարական ծառայությունը վերահսկում է երկրի ռադիոհաղորդումներն ու հեռուստահաղորդումները (տրվում են 1950-ից):

**XIII. Գրականությունը**

Իսպանական նվաճումից առաջ Մ-ի տարածքում գոյություն է ունեցել բնիկների լեզուներով (հիերոգլիֆ գրերով) գրականություն: XVI դ. սկսած Մ-ի գրականությունը զարգացել է իսպաներեն: Առաջինը իսպաներեն գրել են կոնկիստադորները:

XVII դ. սկզբներին երևան է եկել մեքս. առաջին սեփական գեղարվեստական ստեղծագործությունը՝ Բ. դե Վալբուենայի (1568—1627) «Մեքսիկայի շքեղությունը» (1604) պոեմը: XVII դ. հայտնի է բանաստեղծուհի և դրամատուրգ Խուանա Ինես դե լա Կրուսը (1651—95): Այսպես կոչված ուսյալ պոեզիային զուգընթաց զարգացել է ժող. բանավոր պոեզիան: Նրան հատուկ երգիծականությունն ուժեղացել է XVIII դ. վերջին, երբ երկրի քաղ. ու հոգևոր կյանքի բոլոր բնագավառներում հասունացել էր Իսպանիայի գաղութային ռեժիմի դեմ ուղղված բողոքը: Ազգային ինքնահաստատման միտումն արտահայտվել է նաև գրականության մեջ [Ռ. Լանդիվարի (1731—93) «Գյուղական Մեքսիկան» (1781) պոեմը, Ֆ. Կլավիխերոյի (1731—87) «Մեքսիկայի հին պատմությունը» (1780—81)]:

Անկախության համար պայքարի շրջանում (1810—24) վերելք ապրեցին հրապարակախոսությունն ու հայրենասիրական պոեզիան, որը ներկայանում է Ա. Կինտանա Ռոոյի (1787—1851)՝ ազգային հիմնի հեղինակի բանաստեղծություններով: Հակաիսպանական պատերազմի թեժ պահին հրատարակվեց Խ. Խ. Ֆերնանդես դե Լիսարդիի «Պերիկիլիո Սարնիենտո» (առաջին մասը 1816-ին) մեքս. առաջին վեպը, որտեղ երգիծական ձևով պատկերված էր գաղութային հասարակարգը:

Անկախ Մ-ի գրականության մեջ առաջին գեղարվեստական ուղղությունը եղել է ռոմանտիզմը (բանաստեղծներ Մ. Ակունիա (1849—73), Գ. Պրիետո (1818—97): Իրենց վեպերում անկախ Մ-ի ազգային իրականությունն են պատկերել Մ. Պայնոն (1810—94), Լ. Ինկլանը (1816—75), Տ. դե Կուեյյարը (1830—94): Այս շրջանում մեծ դեր է խաղացել վիպագիր, հասարակական գործիչ Ի. Մ. Ալտամիրանոն (1834—93), որն առաջ է քաշել մեքս. գրականությունը եվրոպականից անկախ դարձնելու պայքարի ծրագիր:

XIX դ. վերջին տասնամյակներին մեքս. պոեզիայում երևան եկավ մոդեռնիստական ուղղությունը [բանաստեղծներ Մ. Խ. Օտոն (1858—1906), Մ. Գուտիերես Նախերա (1859—95), Ս. Դիաս Միրոն (1835—1928), Ա. Ներվո (1870—1919)]: XIX դ. վերջին, Պ. Դիասի բռնատիրության շրջանում, Մ-ի արձակում երևան եկան ռեալիստական միտումներ (Ռ. Դելգադո, Խ. Լոպես Պորտիլիո ի Ռոխաս, Ֆ. Գամբոա): Սոցիալական խիստ քննադատականությամբ են հատկանշվում նաև Է. Ֆրիասի (1870—1925) և Ա. դել Կամպոյի (1868—1908) գործերը:

Մեքս. գրականության զարգացման նոր փուլը կապված է 1910—17-ի բուրժուադեմոկրատական հեղափոխության հետ: Մ. Ասուելան (1873—1952) «Ներքևինները» (1916) վեպով սկզբնավորեց այսպես կոչված հեղափոխության վեպը: Այս ոգով են գրված Մ. Գուսմանի (ծն. 1887), Գ. Լոպես ի Ֆուենտեսի (1897—1966), Խ. Ռոմերոյի վեպերը, Ռ. Մունիոսի (ծն. 1899), Ն. Կամպոբելիոյի (ծն. 1909) տարբեր ժանրի գործերը: Մասամբ այս հոսանքի հետ է կապված Մ-Խ. Մանսիսիդորի (1895—1956) ստեղծագործությունը:

XX դ. մեքս. խոշորագույն բանաստեղծներն են Ռ. Լոպես Վելարդեն (1888—1921), Է. Գոնսալես Մարտինեսը (1871—1952), Կ. Պելիսերը (ծն. 1899): Ազգային ինքնաարտահայտման և ինքնահաստատման գաղափարը, որ իշխող է դարձել Մ-ի 1920—30-ական թթ. գրականության մեջ, մշակվել է փիլիսոփա Խ. Վասկոնսելոսի (1882—1959), բանաստեղծ, փիլիսոփա-էսսեիստ Ա. Ռեյեսի (1889—1959) և ուրիշների երկերում: Հետագայում այդ գաղափարը շարունակել է ուսումնասիրել ու հարստացնել բանաստեղծ Օ. Պասան (ծն. 1914):

Մեքս. արձակի նոր վերելքն սկսվել է 1950-ական թթ. կեսերից: Այս փուլը, որ սկզբնավորվել է Ա. Յանիեսի (ծն. 1904) «Տեղատարափից առաջ» (1947) վեպով, ներկայացվում է նաև Խ. Ռուլֆոյի (ծն. 1918), Կ. Ֆուենտեսի (ծն. 1928), Ռոսարիո Կաստելիանոսի (ծն. 1925), Ս. Գալինդոյի (ծն. 1926) վեպերով:

**XIV. Ճարտարապետությունը և կերպարվեստը**

Հին շրջանում (մինչև XVI դ.) Մ-ի տարածքում զարգացել են հնդկացիների մի շարք գեղարվեստական մշակույթներ: Ճարտ-յան վերելքը սկսվել է մ. թ. ա. I հազարամյակում: Կազմավորվել են կրոնական և մշակութային կենտրոններ, քաղաքներ կենտրոնական Մ-ում [Տեոտիուական, Տախին (տոտոնակների մշակույթ), Չոլուլա և Տուլան (տոլտեկների մշակույթ), Տենոչտիտլան (ացտեկների մշակույթ)], երկրի հվ-ում [Մոնտե Ալբան (սապոտեկների և միշտեկների մշակույթ), Միտլա (միշտեկների մշակույթ)], հվ-ում և Յուկատան թերակղզում [Բոնամպակ, Պալենկե, Յաշչիլան, Մայապան, Ուշմալ, Չիչեն Իցա (մայաների մշակույթ)]: Մ-ի հին քաղաքաշինության մեջ մշակվել են երկրաչափական հատակագծման հնարներ: Քաղաքներում կառուցվել են աստիճանաձև վիթխարի բուրգ-տաճարներ (Չոլուլայի բուրգի հիմքի կողը 440 *մ* է), կեծ կամարներով շենքեր, ծիսական խաղերի հրապարակներ: Կերպարվեստը, որի մ. թ. ա. II հազարամյակի նմուշներից են արխաիկ մշակույթի արձանիկներն ու ձևավոր անոթները, մ. թ. ա. I հազարամյակից սկսած յուրացրել է վաղ ստրկատիրական հասարակության մշակույթին հատուկ ձևերի ամբողջ հարստությունը (տոլտեկների և ացտեկների՝ մարդակերպ և ֆանտաստիկ կերպարներով քարե քանդակներ, մայաների դեկորատիվ բարձրաքանդակներ): Կյանքի անմիջական պատկերմամբ են առանձնանում հին Մ-ի բոլոր ժողովուրդների մանր քանդակները: Զարգացել են նաև որմնանկարչությունը, ոսկերչությունը, դրվագված կենցաղային խեցեղենի ու փետրե իրերի պատրաստումը: Իսպանացիների կողմից Մ-ի նվաճումը կործանեց հնդկացիների ինքնատիպ մշակույթը: Սակայն բնիկների գեղարվեստական ավանդույթները ազդեցին գաղութացման շրջանի արվեստի վրա, և երկու մշակույթների սինթեզը կանխորոշեց հետագայում Մ-ի ազգային արվեստի ծաղկումը:

Գաղութացման շրջանում (XVI—XIX դդ. սկիզբ) առանձնապես բուռն զարգացել են ճարտ. ու քաղաքաշինությունը: Շենքերը կառուցվել են իսպ. ճարտ. օրինակով, միաժամանակ դրսևորվել են տեղական յուրօրինակության գծեր: Նոր քաղաքները կառուցվել են փողոցների ուղղանկյուն ցանցով: Դրանց կենտրոնում սովորաբար գլխավոր հրապարակն էր ճոխ հարդարված շենքերով՝ տաճարով, կառավարչի պալատով և ռատուշայով: Միատեսակ բնակելի թաղամասերը կառուցապատված էին իսպանական տիպի 1 կամ 2-հարկանի տներով: Այդ սկզբունքով է կառուցվել Մ-ի մայրաքաղաքը՝ Մեխիկոն (ավերված Տենոչտիտլանի տեղում): Իսպանական քաղաքացիական վաղ շինությունները


Սանտա-Մարիա դե Օկոտլան եկեղեցին (մոտ 1745—60) Տլասկալայի մոտ


Մեխիկոյի համալսարանական քաղաքի տիեզերական ճառագայթների լաբորատորիան (1952, ճարտ-ներ՝ Ֆ. Կանդելա, Խ. Գ. Ռեյնա)


Դ. Ա. Սիկեյրոսի անվ. մշակույթի կենտրոնը Մեխիկոյում («Պոլիֆորում», 1971)

(Կորտեսի պալատը Կուեռնավակայում, 1530—33) և կալվածատերերի դաստակերտները բերդի էին նման: Առանձնապես ամրացվում էին վանքերը: XVI դ. 2-րդ կեսին —XVII դ. սկզբին կառուցվել են եռանավ, գլանային թաղերով, գմբեթներով և երկու բարձր աշտարակներով քաղաքային մեծ տաճարներ (տաճար Պուեբլայում, 1555—1649, տաճար Մեխիկոյում, 1563—1667): Մ-ի ճարտ. մեջ թույլ դրսևորված Վերածնունդը արագ փոխարինվել է բարոկկո ոճով (տաճար Մորելիայում, 1640—1705, Ազգային պալատը Մեխիկոյում, 1692—99), իսկ XVIII դ՝. «ուլտրաբարոկկոյով»: XVIII դ. վերջին Մ-ի ճարտ. մեջ նկատելի են կլասիցիստական միտումներ (Մ. Տոլսայի շինությունները): Գաղութացման ժամանակաշրջանի կերպարվեստի օրինակներ են վանքերի՝ հին մեքս. տեխնիկայով կատարված սև-սպիտակ (երբեմն այլ գույների օգտագործումով) որմնանկարները (XVI դ.), XVI դ. 2-րդ կեսի —XVII դ. կրոնական հաստոցային գեղանկարչությունը (Խուարես և դե Էչավե ընտանիքների վարպետներ), XVIII դ. առավել ինքնուրույն դիմանկարչությունը (Մ. Կաբրերա): Քանդակագործությունը հիմնականում զարգացել է որպես ճարտ. դեկորի ձյուղ: XVIII—XIX դդ. սահմանագծին Մ-ի գեղանկարչությունն ու քանդակագործությունը կրել են եվրոպական կլասիցիզմի ազդեցությունը:

XIX դ. Մ-ի ճարտ. դանդաղ է զարգացել: Առաջատար դեր են խաղացել իսպանական, իտալ. և ֆրանս. վարպետները. տեղացի ճարտարապետների պատրաստումն սկսվել է միայն XIX դ. 2-րդ կեսին: Մայրաքաղաքի խոշոր կառույցների ճարտ. մեջ գերիշխել է ուշ կլասիցիզմը, որը XIX—XX դդ. սահմանագծին փոխարինվել է ճոխ էկլեկտիկայով (Գեղեցիկ արվեստների պալատը Մեխիկոյում, 1904—34, ճարտ. Ա. Բոարի) և «մոդեռն» ոճով: XIX դ. 2-րդ կեսին —XX դ. սկզբին Մեխիկոյում կառուցվել են նոր մայրուղիներ, կառուցապատվել են արվարձանները: XIX դ. վերջից շինարարության մեջ կիրառվել է մետաղ, բետոն, երկաթբետոն: 1920—1930-ական թթ. մայրաքաղաքի ճարտ. կողմնորոշվել է դեպի այսպես կոչված գաղութային ոճը, ինչպես նաև կլասիցիզմը, որի գլխավոր ներկայացուցիչն էր Կ. Օրբեգոն Սանտասիլյան: 1920-ական թթ. կեսերից Մ-ում ձևավորվել է ֆունկցիոնալիզմի ճարտ. դպրոցը (աշխարհում ամենավաղերից մեկը, իսկ Ամերիկայում առաջինը)՝ Խ. Վիլյագրան Գարսիայի գլխավորությամբ: Մ-ի արդի ճարտ. ամենահայտնի ներկայացուցիչը Մ. Պանին է: Մեխիկոյի համալսարանական քաղաքի վիթխարի անսամբլում (կառուցվել է 1949—54-ին, Կ. Լասոյի ղեկավարությամբ և հարյուրից ավելի ճարտարապետների մասնակցությամբ) մարմնավորվել են XX դ. կեսերի մեքս. ճարտ. լավագույն գծերը՝ հատակագծման և ծավալա-տարածական հորինվածքի վարպետություն, ռելիեֆի տարբեր մակարդակների օգտագործում, արհեստական և բնական նյութերի գեղեցիկ զուգակցում, ճարտ. և մոնումենտալ-դեկորատիվ արվեստի սինթեզի լայն կիրառում, դեկորի արտահայտչականություն: Կողմնորոշումը դեպի պատմական ավանդույթները (որի կողմնակիցներն էին Կ. Լասոն, Ա. Արայը և Դ. Ռիվերան) 1950—60-ական թթ. մի շարք ճարտարապետների հարկադրեց դիմելու Լ. *Միս վան դեր Ռոեի* դպրոցի հնարներին, օրգանական ճարտարապետության սկզբունքներին (Լ. Բառագան, Խ. Օ՚Գորման), ճարտ. ձևաստեղծման մեջ աբստրակտ քանդակագործության սկզբունքների օգտագործմանը (Մեխիկոյի արբանյակ-քաղաքի մուտքի աշտարակների հեղինակ Մ. Գյորիցի ստեղծագործությունը): XX դ. կեսերի ոչ միայն մեքս., այլև համաշխարհային ճարտ. զարգացման վրա ազդել է Ֆ. Կանդելայի ստեղծագործությունը, որն ստեղծել է ամենաբարդ հորինվածքային մտահղացումներն իրականացնելու հնարավորություն ընձեռող երկաթբետոնե բազմազան թաղ-թաղանթներ (գլխավորապես՝ թամբաձև): 1950—60-ական թթ. Մ-ում ընդլայնվել է բազմահարկ բնակելի և հասարակական շենքերի շինարարությունը. Մեխիկոյում 1968-ի օլիմպիադայի առթիվ կառուցվել են «Ացտեկա» ստադիոնը (ճարտ. Պ. Ռամիրես Վասկես), մարզապալատը (ճարտ. Ֆ. Կանդելա), թանգարանային շենքեր (ճարտ. Պ. Ռամիրես Վասկես), ծավալվել է շինարարությունը խոշոր արդ. (Գվադալախարա, Մոնթերեյ) և առողջարանային (Կուեռնավակա, Ակապուլկո) կենտրոններում, հիմնվել են նոր քաղաքներ (Սյուդադ Պեմեքս, Սանտա Ֆե):



Դ. Ռ ի վ ե ր ա. «Քնած երկիրը», որմնանկար Չապինգոյի Ազգային գյուղատնտեսական դպրոցում (1926—27)



Դ. Ս ի կ ե յ ր ո ս. «Նոր դեմոկրատիա», Մեխիկոյի Գեղեցիկ արվեստների պալատի որմնանկար, հատված (1945)



Լ. Մ ե ն դ ե ս. «Ծարա՚վ եմ», լինոփորագրություն «Ռիո Էսկոնդիդո» նկարաշարից (1948)

XIX դ. Մ-ի կերպարվեստն աստիճանաբար ազատագրվել է գաղութացման շրջանի քարացած ավանդույթներից և սկսել ավելի արագ ընկալել Եվրոպայի գեղարվեստական մշակույթի ազդակները: Եկվոր նկարիչներն ու տեղացի վարպետները հետևել են XIX դ. լատինամերիկյան ամբողջ արվեստի համար տիպական հոսանքին՝ *կոստումբրիզմին*: XIX դ. կեսին երևան են եկել երգիծական փորագրությունն ու վիմագրությունը (Գ. Վ. Գաոնա և ուրիշներ), զարգացել է դիմանկարչությունը (Խ. Մ. Էստրադա, Է. Բուստոս և այլք): Հայրենի բնության ընդհանրացված պատկեր է ստեղծել բնանկարիչ Խ. Մ. Վելասկոն: XIX—XX դդ. սահմանագծին մեքս. գեղանկարչության վրա ազդել են եվրոպական գեղարվեստական նոր հոսանքները («մոդեռն», իմպրեսիոնիզմ). այդ ժամանակ էլ գեղանկարիչներ Խ. Մուրիլիոն և Ս. Էռանը առաջ են քաշել մեքս. արվեստը վերածնելու, ժամանակակից ազգային ոճ ստեղծելու գաղափարը, իսկ Խ. Գ. Պոսադան հանդես է եկել որպես ժող. գեղարվեստական ավանդույթների հետ ամուր կապված հեղափոխական-դեմոկրատական երգիծական գրաֆիկայի հիմնադիր: 1910—17-ի բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը և կոմունիստական շարժման վերելքը ոգեշնչել են Դ. Ռիվերային, Խ. Կ. Օրոսկոյին, Դ. Սիկեյրոսին և ուրիշ վարպետների՝ ստեղծելու ազգային-դեմոկրատական հեղափոխական բովանդակությամբ ներթափանցված մոնումենտալ որմնանկարչություն (նրանք օգտագործել են նախաիսպանական ժամանակաշրջանի որմնանկարչական տեխնիկան, իսկ 1930-ական թվականներից անցել սինթետիկ ներկերով գեղանկարչությանը): Գեղարվեստական առաջավոր շրջաններում ձևավորվել է ստեղծագործությունն իբրև քաղ. պայքար ըմբռնող և սեփական գործունեությունը մեքսիկական կոմունիստական կուսակցության հետ կապող նկարչի նոր տիպ: Սիկեյրոսի նախաձեռնությամբ 1922-ին կազմավորվել է «Տեխնիկայի և արվեստի



Պ. Օ՚Հ ի գ գ ի ն ս. «Լվացարարուհի», վիմագրություն (1950-ական թթ.)

աշխատողների հեղափոխական սինդիկատը»: 1922-ին Ռիվերան, Օրոսկոն, Սիկեյրոսը սկսել են Մեխիկոյի Ազգային նախապատրաստական դպրոցի որմնանկարները, ապա անցել նաև այլ քաղաքներ: 1950—60-ական թթ. Մ-ի մոնումենտալ գեղանկարչության մեջ գերակշռել են ճարտ. նոր կառույցների հետ սինթեզված ստեղծագործությունները (Օ՚Գորմանի և Խ. Չավես Մորադոյի դեկորատիվ խճանկարները, Սիկեյրոսի խճանկարային թեմատիկ ռելիեֆները, Ռիվերայի և Օ՚Գորմանի որմնանկարները): Ճարտարապետության, քանդակագործության և գեղանկարչության սինթեզի օրինակ է Սիկեյրոսի «Պոլիֆորում» մոնումենտալ-դեկորատիվ կառույցը (1971) Մեխիկոյում: 1930-ական թվականներից Մ-ում տարածվել է նաև մոդեռնիստական հաստոցային և մոնումենտալ գեղանկարչությունը (Ռ. Տամայո և ուրիշներ): Նույն թվականների վերջից սկսվել է քաղ. հրապարակախոսականությամբ ներթափանցված մեքս. գրաֆիկայի ծաղկումը (հիմնականում լինոփորագրություն ու վիմագրություն): «Ժողովրդական գրաֆիկայի արվեստանոցում» միավորված նկարիչները հանդես են եկել հակաֆաշիստական և հակաիմպերիալիստական աշխատանքներով (Լ. Մենդես, Պ. Օ՚Հիգգինս, Ա. Բելտրան, Ա. Գարսիա Բուստոս և ուրիշներ): Ժամանակակից քանդակագործությունը Մ-ում զարգացած է ավելի քիչ, քան գեղանկարչությունն ու գրաֆիկան. նրանում նկատելի է աբստրակտ ձևերով հրապուրվելը (Խ. Կուետո), բայց առանձնապես հատկանշական է հին մեքս. արձանագործության ավանդույթներին դիմելը (Կ. Բրաչո, Ֆ. Սունյիգա): Առավել արտահայտիչ են ճարտարապետության հետ կապված քանդակագործական աշխատանքները (Ռ. Արենաս Բետանկուր, Ֆ. Սունյիգա): Մ-ի ժող. արվեստում միահյուսված են հնդկացիների և իսպ. արվեստի ավանդույթները:

**XV. Երաժշտությունը**

Երաժշտությունը մեծ տեղ է գրավել Մ-ի բնիկների, մասնավորապես հին ացտեկների կյանքում: Մի շարք քաղաքներում գոյություն են ունեցել հատուկ դպրոցներ, ուր երաժշտություն են սովորեցրել: Երգերը կապված են եղել ծեսերի, աշխատանքի հետ: Երաժշտական գործիքներից էին բազմազան թմբուկները, զանգակները, քսիլոֆոնները, ծովային խեցիները: Ժամանակակից Մ-ի տարածքի մեծ մասում կենցաղավարում է հնդկացիական երաժշտությունը, որը կրել է իսպանական և կրեոլական երաժշտական մշակույթի ներգործությունը: Կրեոլական ֆոլկլորի առավել տարածված երգ-պարային ձևերն են՝ սոնը, խարաբեն, ուապանգոն, հաբաներան, երգայինները՝ կանսիոնը, կոռիդոն: Ավանդական ժող. նվագարանը կիթառն է (տարբերակները՝ կիթառոնը և խարանիտան), մասսայական են ջութակն ու տավիղը: XVI դ. սկզբից զարգացել է պրոֆեսիոնալ երաժշտությունը: 1523-ին վանական Պ. դե Գանտեն Տեսկոկոյում հիմնել է երկրում առաջին երաժշտական դպրոցը, ուր հնդկացիներին սովորեցրել են եկեղեցական երաժշտություն: 1527-ին երաժշտական դպրոց է բացվել Մեխիկոյում: XIX դ. սկզբից մայրաքաղաքում և խոշոր քաղաքներում բեմադրվել են իտալացի կոմպոզիտորների օպերաներ: 1825-ին Մեխիկոյում կոմպոզիտոր և դիրիժոր Մ. Էլիսագան հիմնել է երկրում առաջին երաժշտական ակադեմիան, 1826-ին՝ սիմֆոնիկ նվագախումբ: 1866-ին բացվել է կոնսերվատորիա (1877-ից՝ Ազգային կոնսերվատորիա): XIX դ. կեսից, առավելապես օպերայի ժանրում, ստեղծագործել են ազգային կոմպոզիտորներ Ս. Պանիագուա ի Վասկեսը, Ա. Օրտեգան, Մ. Մորալեսը, որոնց ստեղծագործությունը կրում էր եվրոպական օպերային արվեստի ուժեղ ազդեցությունը: Եվրոպական կողմնորոշում ունեին նաև XIX դ. վերջի — XX դ. 1-ին կեսի կոմպոզիտորները՝ Ռ. Կաստրոն, Ռ. Տելիոն, Խ. Կարիլիոն, Խ. Ռոլոնը: Մ. Պոնսեն մեքսիկացի կոմպոզիտորներից առաջինը դիմեց ազգային երաժշտական ֆոլկլորին: Ազգային կոմպոզիտորական դպրոցի հիմնադիրներն են Ս. Ռևուելտասը և Կ. Չավեսը (XX դ. 1-ին կես): Մեքս. երաժշտական մշակույթի զարգացման գործում նշանակալի ավանդ ունեն կոմպոզիտորներ Մ. Բ. Խիմենեսը, Պ. Մոնկայոն, երաժշտագետներ Վ. Գ. Մենդոսան, Օ. Մայեր Սեռան: Երաժշտական առաջատար գործիչներից են (1973) կոմպոզիտորներ Լ. Սանդին, Դ. Այալան, Բ. Գալինդոն, Ռ. Ալֆտերը, դիրիժոր Լ. Էռերա դե լա Ֆուենտեն, ջութակահար Գ. Շերինգը, դաշնակահարներ Կ. Բարախասը և Մ. Տ. Կաստրիլիոնը, կիթառահար Ա. Բրիբիեսկան, երգչուհի Խ. Արայան, ժող. երգերի կատարող Է. Կասանովան: Մեխիկոյում գործում են Ազգային սիմֆոնիկ նվագախումբը, համալսարանի սիմֆոնիկ նվագախումբը, Ազգային օպերան, համալսարանին առընթեր Բարձրագույն երաժշտական դպրոցը: Սիմֆոնիկ նվագախմբեր կան մի շարք քաղաքներում: Մեծ մասսայականություն են վայելում ժող. երաժշտություն կատարող բազմաթիվ վոկալ-գործիքային անսամբլներ:

**XVI. Բալետը**

Մ-ի պարարվեստի հիմքում պարային ֆոլկլորն է, որը զուգակցում է հնդկացիների հնագույն պարերը և իսպանական պարարվեստի ավանդույթները: Ժամանակակից բեմական պարը սկսել է ձևավորվել 1930-ական թթ.՝ ամերիկյան «մոդեռն» պարի ազդեցությամբ: Ֆոլկլորի և «մոդեռն» պարի զուգորդման հետևանքով առաջացել են յուրօրինակ ազգային ձևեր: 1947-ին կոմպոզիտոր Կ. Չավեսը Գեղեցիկ արվեստների ազգային ինստ-ին առընթեր կազմակերպել է Մեքսիկական պարի ակադեմիա (որը գլխավորել է Ա. Մերիդայի և Գ. Բրավոյի հետ միասին): 1947—63-ին գործել է Գեղեցիկ արվեստների բալետ խումբը (ֆինանսավորվել է պետության կողմից): 1947-ից գոյություն ունի Ազգային բալետը, որ ստեղծել են Բրավոն և Խ. Լավալիեն: 1970-ական թթ. սկզբի կոլեկտիվներից են Մեքսիկական պարի ակադեմիայի ժամանակակից բալետը (բալետմայստեր՝ Բ. Խենկել), Անկախ բալետ խումբը (հիմնադրվել է 1966-ին) ևն: Ֆոլկլորային բալետ կոլեկտիվը հիմնադրվել է 1952-ին (բալետմայստեր՝ Ա. Էռնանդես, 1965-ին հյուրախաղերով հանդես է եկել ՍՍՀՄ-ում, 1968-ից կոչվել է Հինգ մայր ցամաքների բալետ, 1971-ից՝ Միջազգային ֆոլկլորային բալետ): 1966-ից Մեխիկոյում անց են կացվում պարի ամենամյա մրցույթներ: Եվրոպական բալետի նկատմամբ հետաքրքրություն առաջացել է միայն 1950-ական թթ.: 1952—1968-ին գործել է Համերգային բալետ խումբը (1970-ական թթ. սկզբից կոչվել է «Դասական բալետ»):

**XVII. Թատրոնը**

Մ-ի թատերարվեստի հիմքը հին հնդկացիների պաշտամունքային ծեսերն են: 1597-ից Մեխիկոյում գոյություն է ունեցել «Կոմեդիայի տուն» թատրոնը, 1670-ին բացվել է «Կոլիսեո» առաջին մշտական թատրոնը, 1735-ին կառուցվել «Նուևո Կոլիսեո»-ն: Մշտական թատրոններ են ստեղծվել նաև Գվադալախարա (1758), Վերակրուս (1787) և այլ քաղաքներում: Բեմադրվել են միայն իսպանացի հեղինակների երկեր, ելույթ ունեցել իսպանացի դերասաններ: Անկախության համար մղվող պայքարի շնորհիվ XIX դ. Մ-ի թատրոնը աստիճանաբար ազատագրվել է իսպանական ազդեցությունից, ձեռք բերել ազգային գծեր: 1823-ին բացվել է «Տեատրո դել պալենկե դե լոս գալիոս» առաջին թատրոնը ժողովրդի համար: Դերասաններ են պատրաստել Ազգային կոնսերվատորիայի դրամատիկական բաժանմունքը (1877-ից), «Մեխիկոյի լիցեյ»-ը (հիմնադրվել է 1867-ին), Երաժշտության և ասմունքի կոնսերվատորիան (1875): 1910—17-ի Մեքսիկական հեղափոխությունը նպաստել է ազգային թատրոնի զարգացմանը: Բեմադրվել են XIX դ.— XX դ. սկզբի դրամատուրգներ Մ. Է. Գորոստիսայի, Ֆ. Գամբոայի, Խ. Խ. Ռուեդայի, Մ. Դավալոսի և այլոց պիեսները: Թատերական կյանքի ակտիվացմանը նպաստել է դերասանուհի և ռեժիսոր Վ. Ֆաբրեգասի 1917-ին կազմակերպած թատերախումբը: 1923-ին հիմնվել է Դրամատուրգների միությունը, 1946-ին՝ Գեղեցիկ արվեստների ազգային ինստ-ը (Մեխիկոյում), որին կից բացվել է դերասաններ և ռեժիսորներ կրթող դպրոց: 1950-ական թվականներից մեծ տարածում է գտել համալսարանական թատրոնների շարժումը: Մեխիկոյում գործում են «Խիմենես Ռուեդա», «Հիդալգո», «Խոլա», «Ռեֆորմա», «Ինսուրխենտես», մանկական, ինչպես և տիկնիկային «Գինյոլ» թատրոնները, Ազգային թատերական թանգարանը: Բեմադրվում են ազգային դրամատուրգների և համաշխարհային դասականների պիեսներ: Թատերական գործիչներից են Մ. Դուգլասը, Ի. Լոպես Տարսոն, Դ. դել Ռիոն, Ի. Ռետեսը, Սեկի Սանոն և ուրիշներ:

**XVIII. Կինոն**

1905-ին ստեղծվել է առաջին գեղարվեստական ֆիլմը: Հնչուն կինոյի երևան գալուց հետո, 1930-ական թթ. թողարկվել են բազմաթիվ շահութաբեր երաժշտական ֆիլմեր՝ հանրահայտ երգիչների մասնակցությամբ: Մեքս. կինոգործիչների կյանքում մեծ երևույթ էր 1931—32-ին սովետական կինեմատոգրաֆիստների Մ-ի մասին ֆիլմի նկարահանման աշխատան-

քը Ս. Էյզենշտեյնի ղեկավարությամբ: 1930—40-ական թթ. ռեժիսորներ Է. Գոմես Մուրիելի, Կ. Նավառոյի, Չ. Ուրուետայի, Խ. Բուստիլիո Օրոյի և ուրիշների ստեղծած ֆիլմերն արտացոլել են Մ-ի սոցիալական կոնֆլիկտները, պատմության հեղափոխական դեպքերը, ժող ովրդի կյանքը: Համաշխարհային ճանաչում ունի ռեժիսոր Է. Ֆերնանդեսի արվեստը, որի լավագույն կինոնկարներից են «Մարի Կանդելյարիա» (1944), «Մարգարիտը» (1947), «Ռիո Էսկոնդիդո» (1948), «Մեքսիկացի աղջիկը» (1949): Մ-ի 1950—70-ական թթ. կինոարվեստի լավագույն նմուշներից են «Արմատներ» (1955, ռեժ. Բ. Ալազրակի), «Խոնավ թիկունքներ» (1955, ռեժ. Ա. Գալինդո), ազգային հերոս Պանչո Վիլյայի մասին Ի. Ռոդրիգեսի նկարահանած կինոեռապատումը (1957—58), «Պեդրո Պարամո» (1966, ռեժ. Կ. Վելո), «Վիլյայի պարտիզանուհին» (1967, ռեժ. Մ. Մորայտա), «Էմիլիո Սապատա» (1970, ռեժ. Ֆ. Կասասլս) ֆիլմերը: Մ-ի կինոգործիչներից են՝դերասաններ Մ. Ֆելիքսը, Դ. դել Ռիոն, Ի. Լոպես Տարսոն, Ա. դե Կորդովան, օպերատոր Գ. Ֆիգերոան: Տարեկան թողարկվում է 70-ից ավելի գեղարվեստական ֆիլմ, գործում է ավելի քան 2000 կինոթատրոն:

Պատկերազարդումը տես 416—417-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակներ XIII—XIV:

Գրկ. Виво Х. А., География Мексики, пер. с исп., М., 1951; Гарфиас В., Чапин Т., Геология Мексики, пер. с исп., М., 1956; Машбиц Я. Г., Мексика. Экономико-географическая характеристика, М., 1961; Мексика. Политика. Экономика. Культура. Сб., М., 1968; Шереметьев И. К., Государственный капитализм в Мексике, М., 1963; Вольский А., История мексиканских революций, М.—Л., 1928; Очерки новой и новейшей истории Мексики. 1810—1945, М., 1960; Паркс Г., История Мексики, пер. с англ., М., 1949; Кинжалов Р. В., Культура древних майя, Л., 1971; История философии, т. 4—5, М., 1959—61; Историография новой и новейшей истории стран Европы и Америки, М., 1968, с. 552—561; Кутейщикова В. Н., Мексиканский роман. Формирование. Своеобразие. Современный этап, [М., 1971]; Фрид Н., Графика Мексики, [пер. с чешск.], М., 1960; Искусство древней Америки, М., 1962; Жадова Л., Монументальная живопись Мексики, М., 1965; Пичугин П., Сильвестр Ревуэльтас и мексиканский фольклор, «Советская музыка», 1961, № 5; Его же, Песни мексиканской революции, там же, 1963, № 11; Мичель М., Панорама мексиканского кино, в сб.: Мексика, М., 1968.

**ՄԵՔՍԻԿԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔ 1861—1867,** Իսպանիայի (1861—62), Մեծ Բրիտանիայի (1862) և Ֆրանսիայի (1862—67) ինտերվենցիան Մեքսիկայի դեմ, Բ. *Խուարեսի* առաջադիմական կառավարությունը տապալելու, Մեքսիկան եվրոպական տերությունների գաղութ դարձնելու նպատակով: Առիթը՝ 1861-ի հուլիսի 17-ին արտաքին պարտքերի վճարումը ժամանակավորապես դադարեցնելու վերաբերյալ մեքսիկական կոնգրեսի ընդունած օրենքն էր: 1861-ի վերջին իսպանական զորքերը օկուպացրին Մեքսիկայի կարևոր նավահանգիստ Վերակրուսը, իսկ 1862-ի հունվարին այդտեղ ափ ելան անգլ. և ֆրանս. զորքերը: 1863-ի հունիսին ֆրանս. զորքերը գրավեցին Մեխիկոն և կայսր հռչակեցին Մաքսիմիլիան I Հաբսբուրգին: Երկրում ծավալված պարտիզանական շարժումը, մեքս. բանակի կանոնավոր զորամասերի հակահարձակումը, ինչպես նաև Ֆրանսիայում առաջացած դժգոհությունը մեքս. արկածախնդրության նկատմամբ, անհաջողության մատնեցին Մ. ա.:

**ՄԵՔՍԻԿԱԿԱՆ ԲԱՐՁՐԱՎԱՆԴԱԿ,** գտնըվում է Հյուսիսային Ամերիկայի հարավում: Գրավում է Մեքսիկայի մեծ մասը: Կազմված է ընդարձակ սարահարթից և նրան արլ-ից, հվ-ից և արմ-ից եզրավորող լեռնաշղթաներից: Տարածությունը մոտ 1200 հզ. *կմ*² է: Մակերևույթի մեծ մասն ունի 1000—2000 *մ* բարձրություն: Մ. բ-ի արլ-ում ձգվում են Արևելյան Սիեռա Մադրե (4054 *մ*), արմ-ում՝ Արևմտյան Սիեռա Մադրե (3150 *մ*), հվ-ում՝ հանգած և զորեղ հզոր հրաբուխների շարքը՝ Ընդլայնական կամ Հրաբխային Սիեռա լեռնաշղթաները: Նշանավոր հրաբուխներից են Օրիսաբան (5700 *մ*, Մ. բ-ի առավելագույն բարձրությունը) Պոպոկատեպետլը, Կոլիման, Պարիկուտինը (վերջին ժայթքումը՝ 1943-ին) ևն: Մ. բ-ի ներքին մասը բաժանվում է Հյուսիսային և Կենտրոնական Մեսաների: Հյուսիսային Մեսան կազմված է 900—1200 *մ* բարձրության առանձին հարթ տեղամասերից (բոլսոններից), Կենտրոնական Մեսան՝ հրաբխային սարահարթերից (2000—2400 *մ* բարձրությամբ): Մ. բ. բաղկացած է կրաքարերից, ավազաքարերից ու մերգելներից: Տարածված են նաև լավային ծածկույթները և ալյուվիալ-դելյուվիալ նստվածքները: Հարուստ է օգտակար հանածոներով: Կան արծաթի, կապարի, ծարիրի, ցինկի, երկաթի, մանգանի, ոսկու և պղնձի հանքավայրեր: Կլիման արևադարձային է, հվ-ում՝ մեղմ, խոնավ, հս-ում՝ չոր ցամաքային: Ձյան սահմանը գտնվում է 4500 *մ* վրա: Բարձր լեռնագագաթները մշտապես ծածկված են ձյունով: Բարձրավանդակի հս-ում գետերը սակավաջուր են, ունեն ժամանակավոր հոսք (բացառությամբ Կոնչոս գետի), հվ-ում համեմատաբար ջրառատ են: Ակտիվ հրաբխականության և երկրաշարժերի շրջանում կան արգելափակոցային և տեկտոնական բազմաթիվ լճեր (Չապալա, Կուիցեո ևն): Բուսական աշխարհը հարուստ է և ինքնատիպ (կա ավելի քան 8 հզ. էնդեմիկ տեսակ): Կենդանիների մեծ մասը պատկանում է նեոարկտիկական (նոր արկտիկական) կենդանաաշխարհագրական մարզին: Մ. բ-ի մեծ մասը նոսր է բնակեցված: Հվ-ի արգավանդ հովիտներում և գոգավորություններում ապրում է Մեքսիկայի բնակչության մոտ կեսը: Տես նաև *Մեքսիկա*:

**ՄԵՔՍԻԿԱԿԱՆ ԾՈՑ** (Gulf of Mexico, Golfo de México), կիսապարփակ ծով Ատլանտյան օվկիանոսում: Գտնվում է Հյուսիսային Ամերիկայի հվ-արլ. ափերի մոտ, Ֆլորիդա, Ցուկատան թերակղզիների և Կուբա կղզու միջև: Մակերեսը 1543 հզ. *կմ*² է, ջրի ծավալը՝ 2332 *կմ*³, խորությունը՝ մինչև 5203 *մ*: Կլիման հվ-ում արևադարձային է, հս-ում՝ մերձարևադարձային: Ամռանը մակերեսին ջրի ջերմաստիճանը -29°C է, ձմռանը հս-ում՝ 18°C, հվ-ում՝ մինչև 25°C: Աղիությունը 36—36,0‰ է: Հաճախակի են փոթորիկները: Մակերեսային հոսանքները հիմնականում ունեն ժամացույցի սլաքի շարժման ուղղությունը: Մ. ծ-ից է սկիզբ առնում *Գոլֆստրիմը*: Կա ձկնարդյունագործություն, նավթարդյունահանություն: Հիմնական նավահանգիստներն են Նոր Օռլեանը (ԱՄՆ), Վերակրուսը (Մեքսիկա), Հավանան (Կուբա):

**ՄԵՔՍԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆ 1910—1917,** հակաֆեոդալական, հակաիմպերիալիստական բուրժուա-դեմոկրատական հեղափոխություն: Սկսվել է 1910-ի նոյեմբերին: Տապալեց պրեզիդենտ Պորֆիրիո Դիասի (1876—1911) կղերակալվածատիրական բռնապետական վարչակարգը: Իշխանության գլուխ անցավ ազգային բուրժուազիայի կառավարությունը պրեզիդենտ Ֆրանսիսկո Մադերոյի ղեկավարությամբ (1911—13-ին): 1913-ին հակահեղափոխական հեղաշրջմամբ երկրում հաստատվեց բռնապետություն (գեն. Վիկտորիանո Ուերտայի ղեկավարությամբ), որի դեմ պայքարի ելան բանվորները: Մ. հ-յան ընթացքում ծավալվեց գյուղացիական պատերազմ Էմիլիանո Սապատայի և Ֆրանսիսկո Վիլյայի («Պանչո») առաջնորդությամբ, որոնց նպատակն էր իրագործել դեռևս Բ. *Խուարեսի* հռչակած ագրարային ռեֆորմը: 1913-ին Սապատայի բանակն իր իշխանությունը հաստատեց հվ. 6 նահանգներում, բռնագրավեց լատիֆունդիաները և բաժանեց գյուղացիներին, երկրի հս-ում հողի համար հաջողությամբ պայքարում էր Վիլյան: Բռնապետության դեմ պայքարում էին նաև լիբերալ կալվածատերերը և բուրժուազիան՝ Վենուստիանո *Կառանսայի* ղեկավարությամբ: 1914-ին իշխանության գլուխ անցավ Կառանսայի կառավարությունը (1914—20): Երկրում սկսված քաղաքացիական պատերազմում Սապատայի և Վիլյայի զորքերը պարտվեցին: ԱՄՆ-ի կառավարությունը 1914-ին իր զորքերը մտցրեց Մեքսիկա, գրավեց Վերակրուս քաղաքը, 1916-ին՝ երկրի հս. մասը: Սակայն նրանց դեմ ծագած հակաիմպերիալիստական շարժումը զավթիչներին ստիպեց հեռանալ երկրից: Հեղափոխությունն ավարտվեց 1917-ին հրավիրված Սահմանադիր ժողովով, այն ընդունեց իր ժամանակի համար առաջադեմ սահմանադրություն, որով նախադրյալներ էին ստեղծվում ագրարային ռեֆորմի իրականացման, Մեքսիկայում կապիտալիզմի զարգացման, ինչպես նաև օտարերկրյա մոնոպոլիաների դեմ պայքարի համար: Թեև Մ. հ. չլուծեց մեքս. ժողովրդին հուզող արմատական հարցեր, սակայն այն մեծ նշանակություն ունեցավ խոշոր հողատիրության թուլացման, օտարերկրյա կապիտալի ներթափանցումը կասեցնելու, ներքաղաքական կյանքի դեմոկրատացման, բանվորների դրության բարելավման, արհմիութենական շարժման զարգացման, Մեքսիկայի և ամբողջ Լատինական Ամերիկայի ժողովուրդների ազգային ինքնագիտակցության բարձրացման համար:

Գրկ. Альперович М., Руденко Б., Мексиканская революция 1910—1917 гг. и политика США, М., 1958.
*Է. Կարապետյան*

**ՄԵՔՍԻԿԱՅԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆ (ՄԿԿ)**, ստեղծվել է 1919-ին: Երկար ժամանակ պայքարել է բանվոր դասակարգի շարքերում տարածված մանրբուրժուական գաղափարախոսության դեմ, հանդես եկել իբրև հակաիմպերիալիստական շարժման կազմակերպիչ: 1924-ին ՄԿԿ նախաձեռնությամբ ստեղծվել է Ամերիկայի հակաիմպերիալիստական լիգան, 1926-ին՝ Ազգային գյուղացիական լիգան (ԱԳԼ), որը խոշոր դեր խաղաց գյուղացիական շարժման ծավալման գործում: 1929-ին կոմկուսը մասնակցեց մեքս. միացյալ արհմիութենական կոնֆեդերացիայի (ՄՄԱԿ) ստեղծմանը: Նույն թվականին էլ ստեղծվեց Բանվորագյուղացիական բլոկը, որի մեջ մտան ՄԿԿ, ՄՄԱԿ, ԱԳԼ և տեղական բանվորական ու գյուղացիական այլ կազմակերպություններ: 1929—36-ին ՄԿԿ գործունեությունն արգելվեց: 1930-ական և 1940-ական թթ. կոմկուսը երկրի մասսայական խոշորագույն ելույթների կազմակերպիչն է եղել: 1940-ական թթ. կեսերին կոմկուսի ղեկավարությունը տուրք է տվել ամերիկյան ռևիզիոնիստ Է. Բրաուդերի գաղափարախոսությանը, որի պատճառով կուսակցությունը սուր ներկուսակցական ճգնաժամ է ապրել: 1950-ական թթ. սկզբին ՄԿԿ կարողացավ հաղթահարել իր շարքերում եղած ֆրակցիոն պայքարը: ՄԿԿ XVI համագումարը (1973) ընդունեց նոր ծրագիր և կանոնադրություն: ՄԿԿ պայքարում է իր շարքերի ամրապնդման, մասսաների մեջ կոմկուսի հեղինակության բարձրացման, ձախ ուժերի գործունեության միասնության համար: ՄԿԿ XVII (1975) և XVIII (1977) համագումարներում քննարկվեցին պրեզիդենտական ընտրություններին առնչվող կոմկուսի խնդիրները, մշակվեցին երկրում ծավալված ճգնաժամի պայմաններում, ինչպես նաև արհմիութենական շարժման հետ կապված ՄԿԿ տակտիկայի հարցերը: ՄԿԿ պատվիրակությունները մասնակցել են կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային (1957, 1960, 1969, Մոսկվա) խորհրդակցություններին և հավանություն տվել նրանցում ընդունված փաստաթղթերին: ՄԿԿ առաջնորդվում է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքներով: Նրա բարձրագույն մարմինն է համագումարը, միջհամագումարյան շրջանում կոմկուսի աշխատանքները ղեկավարում է ԿԿ: ՄԿԿ գլխավոր քարտուղարն է Ա. *Մարտինես Վերդուգոն*: ՄԿԿ տպագիր օրգաններն են «Օպոսիսյոն» («Oposición») ամսագիրը, «Վոս դե Մեխիկո» («La voz de México») թերթը, «Նուեվա Էպոկա» («Nueva Epoca») հասարակական-քաղաքական և տեսական ամսագիրը:

**ՄԵՔՍԻԿԱՑԻՆԵՐ** (ինքնանվանումը՝ մ ե խ ի կ ա ն ո), ազգ, *Մեքսիկայի* հիմնական բնակչությունը (մոտ 50 մլն, 1975): Ավելի քան 4 մլն Մ. բնակվում են ԱՄՆ-ի հվ-արմ. նահանգներում: Խոսում են *իսպաներեն*, որում շատ կան փոխառություններ Մեքսիկայի հնդկացիների զանազան լեզուներից: Մ-ի մեծամասնությունը դավանում են կաթոլիկություն: Մեքս. ազգը ձևավորվել է իսպանացիների, բնիկ հնդկացիների, ինչպես նաև աննշան քանակությամբ նեգրերի միաձուլման հետևանքով (XIX դ. կազմավորվեց Մ-ի մետիսական կորիզը): Կապիտալիզմի զարգացումը, իսպանական գաղութատիրության դեմ ազգային-ազատագրական պայքարը և 1910—17-ի բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը նպաստեցին Մ-ի ազգային վերջնական համախմբմանը: Մ-ի ցայտուն և ինքնատիպ մշակույթի մեջ պահպանվում են իսպանական և հնդկացիական մշակութային ավանդույթներ:

**ՄԵՔՔԱ**, քաղաք Սաուդյան Արաբիայի արևմուտքում, Կարմիր ծովից 70 *կմ* հեռու, Հիջազ նահանգի վարչական կենտրոնն է: Ավտոճանապարհներով կապված է Էր Ռիադի, Մեդինայի, Ջիդդայի հետ: 250 հզ. բն. (1975): Կան զորգերի, եթերահյութերի արտադրություն, Զեմզեմ աղբյուրի «սուրբ ջրի» լցման ձեռնարկություններ և տնայնագործական արհեստանոցներ: Զբաղվում են առևտրով, ուխտագնացների սպասարկումով, կրոնական պաշտամունքի առարկաների՝ մարջանե և պլաստմասսայե համրիչների, ուխտագնացների հագուստների (իխրամ), սուրբ գրքերի վաճառքով:

Մ. առաջին անգամ հիշատակում է Կլավդիոս Պտղոմեոսը (II դ.)՝ Մակորաբա անունով: Մինչև մահմեդականության առաջացումը (VII դ.) կարևոր դեր է խաղացել Արևելքի և Միջերկրական ծովի ավազանի երկրների առևտրի մեջ, եղել Արաբական թերակղզու հեթանոս ցեղերի կրոնական կենտրոն: Մ-ում ծնվել է մահմեդականության հիմնադիր Մուհամմադը (*Մահմեդ*):

VII դարից դարձել է մահմեդականների սուրբ քաղաք և ուխտավայր (ուր այցելողը կոչվում է հ ա ջ ի): Աբբասյանների խալիֆայության տրոհումից (X դ.) հետո գտնվել է Եգիպտոսում տիրողների իշխանության տակ: 1517-ից, երբ թուրքերը նվաճեցին Եգիպտոսը, Մ-ի կառավարիչները՝ *շարիֆները*, ճանաչել են թուրք. սուլթանի գերակայությունը, սակայն պահպանել հարաբերական ինքնուրույնություն: 1916—24-ին Մ. եղել է Հիջազի թագավորության մայրաքաղաքը, 1924-ից՝ Սաուդյան Արաբիայի (մինչև 1932-ը՝ Հիջազ, Նեջդ և միացված մարզեր) կազմում:

**ՄԵՖԻՍՏՈՖԵԼ** (Mephistopheles, Mephistophilis, Mephistophilius), հնարավոր է հուն. ծագում ունի՝ «լուսատյաց», «խավարասեր»: Ըստ մեկ այլ վարկածի՝ հին հրեական ծագում ունի՝ կործանարար-խաբեբա, չարության ոգիներից մեկի, դևի, սատանայի, չարքի, ավելի հաճախ, ըստ ավանդության, անկյալ հրեշտակի անունը: Տարբեր երկրների ու ժողովուրդների բանահյուսությունն ու գեղարվեստական գրականությունը հաճախ են օգտագործել դևի՝ չարության ոգու և մարդու դաշինքի մոտիվը: Երբեմն բանաստեղծներին գրավել է բիբլիական սատանայի՝ «դրախտից արտաքսվելու» պատմությունը, երբեմն էլ նրա ըմբոստացումը աստծու դեմ (Ջ. Միլթոն, Ջ. Բայրոն, Մ. Լերմոնտով), Յո. Գյոթեի «*Ֆաուստ*» փիլ. ողբերգությունում Մ. գայթակղիչ է և Ֆաուստի ախոյանը:

Մ-ի կերպարը ոգևորել է նկարիչների (Է. Դելակրուա, Մ. Վրուբել) և կոմպոզիտորների (Շ. Գունո, Հ. Բեռլիոզ, Ֆ. Լիստ, Ա. Ռուբինշտեյն):

**ՄԶԿԻԹ** (< արաբ. մասջիդ—երկրպագության տեղ), մահմեդական պաշտամունքային կառույց: VII—VIII դդ. կազմավորվել է հատակագծում ուղղանկյուն, սյունասրահներով շրջափակված բակով և բազմասյուն աղոթասրահով Մ-ի տիպը, որի դեպի *Մեքքա* ուղղված պատին եղել են մեկ կամ մի քանի միհրաբներ (Օմայանների Մ. Դամասկոսում, 705—715): Սկսած X դարից տարածում է գտել բակի առանցքով տեղադրված այվաններով Մ-ի տիպը: Տարբեր երկրներում, տեղական շինարարական ավանդույթների ազդեցությամբ, մշակվել են Մ-ի տարբեր տիպեր: Հյուսիսային Աֆրիկայի Մ-ներին բնորոշ են դեպի բակ դուրս եկող բազմաթիվ նավերով խորը աղոթասրահը, արտեսոնադո-առաստաղները, շթաքարեզարդ գմբեթները (Կուտուբիա՝ Մառակեշում, 1153): Իրանում, Կենտրոնական և Միջին Ասիայում կառուցվել են բակի շուրջը այվաններով, գլխավոր ճակատում շենքի ընդհանուր ծավալից դուրս եկող մոնումենտալ շքամուտքով (Կալյան՝ Բուխարայում, XII դ., վերակառուցվել է XV—XVI դդ.), իսկ Թուրքիայում՝ կենտրոնակազմ, կիսագմբեթներով կամ փոքր գմբեթներով շրջապատված մեծ գմբեթով ծածկված (Սուլեյմանիե՝ Ստամբուլում, 1557, ճարտ. Սինան) Մ-ներ: Մ-ները զարդարվել են արհեստական մարմարի, քարի, փայտի փորագրություններով, աղյուսի և քարի ձևավոր շարվածքով, ջնարակած խեցեղենով, խճազարդերով, որմնազարդերով: Ժամանակակից Մ-ները կառուցվում են նորագույն շինարարական նյութերով՝ հիմնականում պահպանելով ավանդական հատակագծումը:

**ՄԶՐԵՆ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Տավրիկ գավառում: 1909-ին ուներ 15 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է բռնագաղթի ճանապարհին: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՄԶՐՈՒԿ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Մոտկան գավառակում: 1909-ին ուներ 20 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է բռնագաղթի ճանապարհին: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՄԷՎ**, էներգիայի միավոր. օգտագործվում է միջուկային և տարրական մասնիկների ֆիզիկայում: 1 *ՄէՎ* = $10^6$ *էՎ*:

**ՄԼԽԿՆԵՐ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Վանի վիլայեթի Արճակ գավառում: 1909-ին ուներ 60 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործու-

թյամբ, այգեգործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը 1915-ի հուլիսին, ռուս. զորքերի նահանջի ժամանակ, գաղթել և բնակություն են հաստատել Արևելյան Հայաստանում:

**ՄԸՍՄԸՆԱ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտունու շրջանում, շրջկենտրոնից 25 *կմ* արևմուտք: Միավորված է Ղավախանի կոլտնտեսության հետ: Ունի տարրական դպրոց, գրադարան: Գյուղում և շրջակայքում պահպանվել են Շոշկա վանքը (XIII դ.), Ս. Աստվածածին եկեղեցի (XIX դ.), խաչքարեր (IX—XVII դդ.):

**ՄԹԱԾՄԻԴԵԼԻ** Գիորգի (հայերեն՝ Գևորգ Սուրբսարեցի կամ Աթոսացի, 1009 — մոտ 1065), վրացի մատենագիր, թարգմանիչ, մեկնիչ, հոգևոր գործիչ: Թարգմանության բնագավառում շարունակել է *Մթածմիդելի* Եքվթիմեի գործը: Կատարել է Ս. Գրքի վերջնական վրացական խմբագրությունը, վրաց. է թարգմանել բազմաթիվ վարքեր, մեկնություններ, պարականոն երկեր: Մ-ու ինքնուրույն գործերից հայտնի է Եքվթիմե Մթածմիդելու վարքը:

*Գրկ.* Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ Լ., Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հ. 1, Ե., 1934, էջ 119—121: *Պ. Մուրադյան*

**ՄԹԱԾՄԻԴԵԼԻ** Եքվթիմե (հայերեն՝ Եքութիմեոս Սուրբսարեցի կամ Աթոսացի, 955—1028), վրացի մատենագիր, մանկավարժ, թարգմանիչ: 1005—1019-ին Աթոնում եղել է վրաց մայրավանքի վանահայրը: Վրաց մատենագրության պատմության մեջ թարգմանական նոր դպրոցի հիմնադիրը (դպրոցին բնորոշ է բնագրային միջամտությունն ու ազգային իրականության արտացոլումը): Մ. թարգմանել է Հովհաննես Ոսկեբերանի, Բարսեղ Կեսարացու, Գրիգոր Նարեկացու, Եփրեմ Ասորու և ուրիշների ստեղծագործություններից, Դավթի սաղմոսները, Աստվածաշնչի մի քանի գիրք, վկայություններ, վարքեր, մեկնություններ, ճառեր, քարոզներ: Վրացերենից հուներեն է թարգմանել «Բաղավարի պատմություն»-ը: Գրել է վրաց. և հուն. ինքնուրույն երկեր:

*Գրկ.* Մ ե լ ի ք ս ե թ-Բ ե կ Լ., Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հ. 1, Ե., 1934, էջ 102—104: *Պ. Մուրադյան*

**ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅՈՒՆ** կ ե ն դ ա ն ի ն ե ր ի, որոշակի ժամանակահատվածում կենդանուց, թռչունից, փեթակից, լճակային ձկնաբուծական և որսորդական տնտեսություններում 1 *հա*-ից միջին քանակի սննդամթերքի կամ հումքի ստացում: Մ. արդյունք է բոլոր հյուսվածքների, օրգանների ու համակարգերի ֆիզիոլոգիական փոխազդեցությամբ պայմանավորված կենսագործունեության և կենդանիների տնտ. օգտակար հատկություն է: Ըստ ստացված արդյունքի տարբերում են կաթնատվություն, մսատվություն, բրդատվություն, ձվատվություն և Մ-յան այլ ձևերը (տես *Կաթ*, *Բուրդ*, *Միս*, *Ձու*, *Կաշի*, *Մեղր* հոդվածները): Գործնականում կիրառվում են կենդանիների առանձին տեսակների համար Մ-յան հաշվառման ու գնահատման հրահանգներ: Դրանք տոհմային, մասամբ նաև ապրանքային տնտեսություններում նոր ցեղերի, գծերի, հիբրիդների ստացման աշխատանքների պարտադիր մասերից են: Մ-յան ավելացումն իրականացվում է աշխատանքի ճիշտ կազմակերպման և անասնաբուծության հիմունքների կիրառման միջոցով: *Վ. Աբրահամյան*

**ՄԹԵՐԱՓՈԽԱՆԱԿՈՒԹՅՈՒՆ**, արտադրողների տնտեսական հարաբերության ձև, երբ աշխատանքի արդյունքներն ու տարբեր ծառայությունները փոխանակվում են անմիջաբար, ուղղակի, առանց փողի միջնորդության: Կիրառվել է մինչկապիտալիստական ֆորմացիաներում: Ապրանքափողային հարաբերությունների զարգացման հետ աստիճանաբար սահմանափակվել է՝ ընդգրկելով միայն թույլ զարգացած երկրները: ՍՍՀՄ-ում Մ. (հատկապես գյուղատնտ. մթերքների փոխանակումը արդ. և տնայնագործական արտադրանքի հետ) պետությունն օգտագործել է գյուղատնտ. և արդ. արտադրությունն ընդլայնելու, քաղաքի և գյուղի տնտ. կապերն աշխուժացնելու, քաղաքացիական պատերազմի և ռազմ. ինտերվենցիայի տարիներին քայքայված տնտեսությունը վերականգնելու ու զարգացնելու նպատակով: Հետագայում, սոցիալիստական էկոնոմիկայի վերելքին զուգընթաց, բնատնտեսական հարաբերությունների տարրերը հաղթահարվել ու վերացել են (օրինակ, ՄՏԿ-ների, կոլտնտեսականների աշխատանքի բնավարձը), իրենց տեղը զիջելով ապրանքափողային հարաբերություններին: Վերջինները կոմունիստական հասարակարգի բարձրագույն փուլում կփոխարինվեն նյութական բարիքների ուղղակի, ըստ պահանջմունքի բաշխմամբ: *Ն. Մանասերյան*

**ՄԹԵՐՄԱՆ ԳՆԵՐ**, սոցիալիստական երկրներում պետական կազմակերպությունների կողմից գյուղատնտեսական ձեռնարկությունների և գյուղի բնակչության արտադրանքի մթերման (գնման) պլանային գներ: 1924-ից գործում էին գյուղատնտ. արտադրանքի պարտադիր մթերման (տես *Մթերում գյուղատնտեսական արտադրանքի*) լիմիտային կամ սահմանային գներ, որոնցով պետությունը կարգավորում էր մթերման շուկայի գները: 1926-ից սահմանվեցին կոնվենցիոն (համաձայնեցվող) գներ, որոնք որոշվում էին տվյալ շրջանի մթերող կազմակերպությունների միջև կնքվող համաձայնագրերով և, ի տարբերություն լիմիտայինի, միջին տարեկան գներ էին (հաշվի էր առնվում մթերման ժամանակը): 1927—28-ին հաստատվեցին հացահատիկի, վուշի, բամբակի, շաքարի ճակնդեղի և այլ կուլտուրաների, 1928—1929-ին՝ կարտոֆիլի, 1930-ին՝ անասնաբուծական հիմնական մթերքների կենտրոնացված (դիրեկտիվ) Մ. գ.: 1932—33-ին կոլտնտեսությունների, կոլտնտեսականների և մենատնտեսների պարտադիր մթերումների ձևով իրացվող ապրանքային արտադրանքի հիմնական տեսակների կենտրոնացված Մ. գ. պահպանվեցին: Միաժամանակ սահմանվեցին նաև գ ն մ ա ն գ ն ե ր, որոնցով տնտեսությունները վաճառում էին պարտադիր մթերումների պլանը կատարելուց հետո մնացած մթերքների մի մասը: Գնման գները Մ. գ-ից բարձր էին (հետագայում, հատկապես տեխ. կուլտուրաների գծով, դրանք նորից բարձրացվեցին): 1953-ին գյուղատնտ. որոշ մթերքների Մ. գ. էապես բարձրացվեցին և մոտեցվեցին արտապլանային արտադրանքի գնման գների մակարդակին: 1958-ից, պարտադիր մթերումների վերացումից հետո, կիրառվում են միասնական գնման գներ, որոնց միջին մակարդակը սահմանվում է կենտրոնացված կարգով, իսկ միութենական հանրապետություններում դրանք տարբերացվում են ըստ առանձին գոտիների և արտադրանքի որակի: 1965-ին և 1970-ին երկրագործական ու անասնապահական մի շարք մթերքների գնման գները բարձրացվեցին, արտապլանային վաճառքի համար սահմանվեց որոշակի հավելագին, կոլտնտեսությունների ու պետ. տնտեսությունների համար 1975-ից սահմանվեցին հավասար գնման գներ: Դրանց մակարդակը որոշելիս հաշվի է առնվում գյուղատնտ. ձեռնարկությունների կատարած նյութական և աշխատանքային ծախսերի փոխհատուցման և կուտակման համար անհրաժեշտ զուտ եկամտի ստացման անհրաժեշտությունը:

Սոցիալիստական մյուս երկրներում գնման գները որոշվում են ելնելով տվյալ արտադրանքի հիմնական զանգվածն արտադրող շրջաններում կատարվող ծախսերի միջին մակարդակից, միասնական են և ըստ գոտիների չեն տարբերացվում: Առանձին շրջաններում արտադրությունը խթանելու համար սահմանվում են գնի հավելումներ:

Կապիտալիստական երկրներում գյուղատնտ. մթերքները վաճառվում են ֆերմերների և առանձին ֆիրմաների միջև կնքված պայմանագրային կամ ազատ շուկայական գներով: Կիրառվում է նաև երաշխիքային գների համակարգը: *Ն. Մանասերյան*

**ՄԹԵՐՈՒՄ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ**, սոցիալիստական երկրներում ժողովրդական տնտեսությանը և բնակչությանն անհրաժեշտ գյուղատնտեսական հումքի և պարենի պետական կենտրոնացված ֆոնդի պլանային ձևավորման միջոց: Գյուղատնտեսության և արդյունաբերության, գյուղի և քաղաքի տնտ. կապի հիմնական ձևերից: Մ. գ. ա. կատարվում է կոլտնտեսություններից, պետական տնտեսություններից և բնակչությունից: Ունի երկու հիմնական ձև՝ կենտրոնացված (պետ.) և ապակենտրոնացված: Կենտրոնացված Մ. գ. ա. կատարում են պետ. մթերող, վերամշակող և առևտրական ձեռնարկությունները՝ նախօրոք սահմանված գներով: Ապակենտրոնացվածն իրականացնում են կոոպերատիվ, առևտրական և հասարակական սննդի առանձին ձեռնարկություններ, իսկ գները որոշում են տեղական մարմինները:

Սոցիալիստական շինարարության տարբեր փուլերում Մ. գ. ա. ձևերը և եղանակները փոփոխվել են: Անցման շրջանում ՍՍՀՄ-ում կիրառվում էին *պարենմասնատրում*, *պարենհարկ*, *կոնտրակտացում*, շուկայական գնումներ, իսկ կոլտնտեսային կարգի հաստատումով Մ. գ. ա. համակարգը էականորեն փոփոխվեց: 1933—1958-ին գործում էին Մ. գ. ա. չորս հիմնական ձևեր՝ պարտադիր հանձնումներ,

կոնտրակտացում, ՄՏԿ-ի բնավարձ և պետ. գնումներ: Կոնտրակտացման նախկին հիմնական ձևը պահպանվեց միայն բարձր ապրանքային հումքային կուլտուրաների (բամբակ, թեյ, շաքարի ճակնդեղ, ծխախոտ ևն) համար: Հիմնական դաշտավարական մթերքների համար 1933-ին մտցվեցին հարկի ուժ ունեցող պարտադիր պետ. հանձնումներ (մթերումներ): Դրանց չափը սահմանվում էր սկզբում ցանքերի, հետագայում՝ վարելահողի, իսկ անասնապահական մթերքների գծով՝ գյուղատնտ. հողերի յուրաքանչյուր *հա*-ից (հեկտարային սկզբունքով):

Մ. գ. ա. մյուս հիմնական ձևը ՄՏԿ-ների կատարած աշխատանքի դիմաց տրվող բնավարձն էր, որի դրույքները կախված էին գյուղատնտ. կուլտուրաների բերքատվությունից: ՄՏԿ-ների աշխատանքի ծավալի ավելացման հետ բնավարձի չափերը գերազանցեցին հացահատիկի պարտադիր հանձնումները և դարձան պետ. մթերումների հիմնական աղբյուրը: 1958-ին, ՄՏԿ-ի վերացմամբ, Մ. գ. ա. համակարգը փոխվեց, վերացվեցին պարտադիր հանձնումներն ու ՄՏԿ-ի բնավարձը, մթերումների միակ ձևը դարձավ արտադրանքի պետ. գնումները:

ՍՄԿԿ Կենտկոմի 1965-ի Մարտյան պլենումի և կուսակցության հետագա որոշումներով նոր փոփոխություններ մտցվեցին Մ. գ. ա. համակարգում: 1966—70 և 1971—1975-ին հաստատվեցին հացահատիկի, ձիթատու կուլտուրաների սերմերի, կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի, բամբակ-հումքի, անասունների և թռչունի, կաթի, ձվի, բրդի և գյուղատնտ. այլ մթերքների պետությանը վաճառելու կայուն առաջադրանքներ: Պետ. գնումների պլանները հաստատվեցին յուրաքանչյուր շրջանի և տնտեսության համար, հաշվի առնելով դրանց մասնագիտացումը և զարգացման հեռանկարները՝ սահմանվեց արտապլանային վաճառքի հավելյալ խրախուսագին, որը տնտեսապես խթանում է արտադրանքի ավելացումը ևն:

Եվրոպայի սոցիալիստական երկրներում Մ. գ. ա. իրագործում են պետ. և սպառողական կոոպերացիայի կազմակերպությունները, պետ. պլանային առաջադրանքների և կոնտրակտացման պայմանագրերի ձևերով, որոնք կնքվում են գյուղատնտ. ձեռնարկությունների (կոոպերատիվ կամ պետ.) և դրանց արտադրանքի սպառողների (վերամշակող, մթերող և առևտրական կազմակերպություններ ու ձեռնարկություններ) միջև: Պայմանագրային ձևը գերակշռում է և նպաստում տնտ. շահերի փոխադարձ հաշվառմանը: Մթերող կազմակերպությունները չունեն վարչական իրավունքներ գյուղատնտ. ձեռնարկությունների նկատմամբ, պայմանագրի մասնակիցների կապերը հիմնված են փոխշահավետության և իրավահավասարության վրա: Ժամանակակից պայմաններում Մ. գ. ա. մթերումների հիմնական ձևն է: Կապիտալիստական երկրներում գյուղատնտ. արտադրանքի գնումները կատարում են ֆերմերները, պետությունը և վերամշակող կամ իրացնող ձեռնարկությունները՝ պայմանագրային հիմունքներով, որոնք հաշվի են առնում ներքին և արտաքին շուկայի կոնյունկտուրան: Պետ. գնումները, որպես կանոն, կատարվում են տվյալ երկրի արտաքին վճարային հաշվեկշռի վատացման կամ երկրի ֆերմերներին օժանդակություն ցույց տալու համար, երբ նրանց արտադրանքը շուկայում չի իրացվում:

**ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅՈՒՆ ՀՍՍՀ**, գյուղատնտեսական արտադրանքի ու հումքի մթերման, պահպանման կազմակերպումն ու ղեկավարումն իրականացնող պետական մարմին: Կազմակերպվել է 1969-ին՝ հացամթերքների ու համակցված կերերի արդյունաբերության պետ. կոմիտեի բազայի վրա: Բաղկացած է պետ. 4 տեսչությունից (հացահատիկի և տեխ. կուլտուրաների, պտղի, բանջարեղենի և կարտոֆիլի, անասնապահական մթերքների մթերումների, գյուղատնտ. մթերքների որակի), 7 վարչությունից (էլեվատորային արդյունաբերության, պլանային-տնտեսագիտական, հացաֆուրաժային մատակարարման և հացի պետ. ռեզերվի, ալրաղաց և ձավարեղենի, համակցված կերերի, տրանսպորտի, հաշվապահական հաշվառման և հաշվետվության), 6 բաժնից (կապիտալ շինարարության, տեխ., համալրման և նյութատեխնիկական մատակարարման, կադրերի, սորտային սերմերի, վարչատնտեսական), արտադրանքի որակի հսկման խմբից: Մթերումների կազմակերպման աշխատանքներն իրականացնում է գյուղատնտ. արտադրանքի մթերման և որակի շրջանային պետ. տեսչությունների, իսկ հացահատիկի, հացահատիկային կուլտուրաների սորտային սերմերի, խոտի և խոտալյուրի պետ. գնումները՝ հացաընդունման ձեռնարկությունների միջոցով: Մինիստրությանը ենթարկվում են նաև Երևանի ալրաղաց գործարանը, էլևատորը, հացի իրացման բազան, Սևանի և Սպիտակի հացամթերման կոմբինատները, Երևանի ու Թալինի համակցված կերերի գործարանները, այլ օժանդակ ձեռնարկություններ: 1969-ից մինիստրն է Օ. Տ. Հովակիմյանը:

**ՄԹԻՍԿԱԼԹԱ**, հայաբնակ գյուղ Աբխազական ԻՍՍՀ Սուխումի շրջանում, շրջկենտրոնից 25 *կմ* հյուսիս: Կոլտնտեսությունն զբաղվում է ծխախոտի և եգիպտացորենի մշակությամբ, այգեգործությամբ: Մ. հիմնադրել են Տրապիզոնի շրջակա գյուղերից եկած հայերը, 1894-ին:

**ՄԹԻՍՈՒԲԱՆԻ**, հայաբնակ գյուղ Աբխազական ԻՍՍՀ Սուխումի շրջանում, շրջկենտրոնից 17 *կմ* հյուսիս: Կոլտնտեսությունն զբաղվում է ծխախոտի և եգիպտացորենի մշակությամբ, այգեգործությամբ, մեղվաբուծությամբ: Ունի հայկ. ութամյա դպրոց, ակումբ, գրադարան, բուժկայան: Մ. հիմնադրել են հույները, 1873-ին: Հայերը եկել են Տրապիզոնից, 1896-ին:

**ՄԹՆԻ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Երզնկա գավառում: 1909-ին ուներ 85 ընտանիք հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ և արհեստներով: Գյուղում կար եկեղեցի և դպրոց: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին, Կամախի կիրճում: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՄԹՆՇԱՂ**, տես *Աղջամուղջ*:

**ՄԹՆՈԼՈՐՏ** Երկրի, Երկիրը շրջապատող և նրա հետ պտտվող օդի թաղանթը: Երկրի մակերևույթին մոտ Մ. կազմված է ազոտից (78,1 ծավ. %), թթվածնից (21%), արգոնից (0,9%) և փոքր քանակներով ածխաթթու գազից, ջրածնից, հելիումից, նեոնից և այլ գազերից: Մ-ի ստորին՝ 20 *կմ* հաստությամբ շերտում, կան նաև ջրային գոլորշիներ, որոնց քանակը երկրի մակերևույթի մոտ փոփոխվում է $2\cdot10^{-5}$%-ից (Անտարկտիդա) մինչև 3% (արևադարձերում) և ըստ բարձրության արագ նվազում: Մ-ի զանգվածը կազմում է Երկրագնդի զանգվածի մոտ 0,000001 մասը ($5,15\cdot10^{15}$ *տ*), որի մոտ կեսը կենտրոնացած է ներքին 5 *կմ* հաստությամբ շերտում: Մ-ի խտությունն ու ճնշումը բարձրության հետ նվազում են: Մ-ի վերին սահմանը որոշակի չէ, որովհետև նրա խտությունն ասիմպտոտորեն է ձգտում տիեզերական տարածության խտությանը, սակայն որպես Մ-ի վերին սահման պայմանականորեն ընդունված է 1000—1300 *կմ* բարձրությունը, որովհետև այդ բարձրության վրա դեռ կարելի է ֆոտոմետրական և սպեկտրալ նուրբ չափումների օգնությամբ հայտնաբերել Մ-ի շատ թե քիչ որոշակի հետքեր:

Ժամանակակից Մ., ըստ երևույթին, ունի երկրորդային ծագում և առաջացել է Երկիր մոլորակի կազմավորումից հետո, նրա կարծր կեղևից անջատված գազերից: Ժամանակի ընթացքում Մ. մի քանի գործոնների (հրաբխային գործունեության, արեգակնային ուլտրամանուշակագույն ճառագայթման, Մ-ի և Երկրի կեղևը կազմող նյութերի միջև ընթացող քիմ. ռեակցիաների ևն) ազդեցության հետևանքով կրել է զգալի էվոլյուցիոն փոփոխություններ: Մ-ի զարգացումը սերտորեն կապված է երկրբ. և երկրաքիմիական պրոցեսների, ինչպես նաև կենդանի օրգանիզմների գործունեության հետ:

Մ. մեծ դեր է խաղացել Երկրի կեղևի հողմահարման պրոցեսում: Դրան զուգընթաց Մ. պաշտպանում է Երկրի մակերևույթը նրա վրա ընկնող մետեորիտների և Արեգակի ուլտրամանուշակագույն ճառագայթման կործանարար ազդեցությունից: Մ-ի կլիմայական գործոնները, հատկապես ջերմային և խոնավության ռեժիմները որոշակի ազդեցություն են գործում մարդու առողջական վիճակի վրա:

Մարդու գործունեությունն իր հերթին զգալի ազդեցություն է գործում Մ-ի կազմության և կլիմայական ռեժիմի վրա (տես *Կլիմա*): Հիմք ընդունելով ջերմաստիճանի և խտության բաշխումն ըստ բարձրության, Մ. ստորաբաժանում են 5 հիմնական շերտի (ոլորտի), 1. տրոպոսֆերա՝ տարածվում է մինչև 8—18 *կմ* բարձրություն (կախված աշխարհագրական լայնությունից) և աչքի է ընկնում ըստ բարձրության ջերմաստիճանի զգալի անկումով (մոտ 6° 1 *կմ*-ի վրա, հասնում է մինչև 210—220 K): Այստեղ է կուտակված Մ-ի զանգվածի մոտ 80%-ը և համարյա ամբողջ ջրային գոլորշին: Այդ շերտում են




Ջերմաստիճանի ուղղաձիգ բաշխումը մթնոլորտում

զարգանում եղանակի բոլոր երևույթները (մթնոլորտային ճակատները, ամպամածությունը, տեղումները ևն)։ Տրոպոսֆերայի ներքին՝ 700—1500 *մ* հաստությամբ շերտը կոչվում է շփման շերտ, որում տուրբուլենտային տեղաշարժերը զգալի ազդեցություն են գործում քամու ձևավորման վրա։ Տրոպոսֆերայում առանձնացվում է նաև երկրամերձ շերտը 30—50 *մ* հաստությամբ, որը գտնվում է երկրի մակերեսի անմիջական ազդեցության տակ. այդ շերտում են հիմնականում արտահայտվում *միկրոկլիմայի* առանձնահատկությունները։

2. Ստրատոսֆերա՝ անջատվում է տրոպոսֆերայից մոտ 1 *կմ* հաստությամբ անցողիկ շերտով՝ տրոպոպաուզայով։ Ստրատոսֆերան տարածվում է մինչև 40 *կմ* բարձրություն և բնութագրվում ստորին մասում ջերմաստիճանի ըստ բարձրության հաստատուն դանդաղ, իսկ վերին մասում համեմատաբար արագ աճով (հասնում է մոտ 270 K-ի 50 *կմ* բարձրության վրա), որը հետևանք է օդի զգալի նոսրությամբ պայմանավորված փոքր ջերմունակության և ջրային գոլորշիների բացակայության պատճառով առաջացած ճառագայթային ջերմափոխանակության։ Ստրատոսֆերայի միջին (20—25 *կմ* բարձրության)մասում դիտվում է օզոնի զգալի համակենտրոնացում, որը կլանում է կենդանի օրգանիզմի համար վնասակար Արեգակի կարճալիք ճառագայթների մեծ մասը։

3. *Մեզոսֆերա*՝ 40—80 *կմ* բարձրության շերտը։ Մեզոսֆերայում ջերմաստիճանի ըստ բարձրության անհավասարաչափ բաշխումը պայմանավորում է օդային զանգվածների տուրբուլենտության զգալի զարգացում։

4. Ջերմոլորտ, անվանում են նաև *իոնոսֆերա* (երբ նկատի են ունենում նրա էլեկտրական հատկությունները), աչքի է ընկնում ջերմաստիճանի ըստ բարձրության անընդհատ աճով (գիշերը՝ մինչև 500 K, ցերեկը՝ 750 K)։ Գազերի իոնացման առավելագույն չափը նկատվում է 80—120 *կմ* և 200—400 *կմ* բարձրության շերտերում։

5. Էկզոսֆերա կամ ցրման ոլորտ՝ թեթև գազերի դեպի տիեզերական տարածություն հոսելու գոնա, գտնվում է 800—1000 *կմ* բարձրության վրա։

Մ. գտնվում է անընդհատ շարժման մեջ (տես *Մթնոլորտի շրջանառություն*) և կատարում է ջերմության ու ջրի (գոլորշիների կամ կաթիլների ձևով) միակ փոխադրամիջոցի դեր։ Տես նաև *Մթնոլորտ մոլորակների*։

**ՄԹՆՈԼՈՐՏ**, ճնշման արտահամակարգային միավոր։ Ն ո ր մ ա լ կամ ֆ ի զ ի կ ա կ ա ն Մ. (նշանակվում է *մթն*, միջազգային նշանակումը՝ atm) 760 *մմ* բարձրության սնդիկի սյունով հավասարակշռվող ճնշումն է՝ 0°C-ի, սնդիկի 13595,1 *կգ/մ*$^3$ խտության և ազատ անկման նորմալ արագացման (9,80665 *մ/վրկ*$^2$) դեպքում։ Տ ե խ ն ի կ ա կ ա ն Մ. (նշանակվում է *մթ*, at) 1 *սմ*$^2$ մակերեսով հորիզոնական հարթ մակերևույթի կրած ճնշումն է հավասարաչափ բաշխված 1 *կԳ* ուժի ազդեցությամբ։ 1 մթն= 1,0332 մթ= 101325 *ն/մ*$^2$ (*պա*), 1 մթ= 0,967841 *մթն*= 98066,5 *ն/մ*$^2$ (*պա*)։

**ՄԹՆՈԼՈՐՏ ԱՍՏՂԵՐԻ**, *աստղերի* արտաքին, անմիջականորեն դիտվող շերտ, որտեղ առաջանում է դրանց ճառագայթման սպեկտրը։ Մ. ա. պայմանականորեն բաժանում են մի քանի շերտի՝ լուսոլորտ, գունոլորտ (ստորին շերտը՝ շրջող շերտ) և պսակ։ Լ ու ս ո լ ո ր տ ը մթնոլորտի ամենախոր և ամենախիտ շերտն է, որտեղ առաջանում է աստղի անընդհատ սպեկտրը։ Այդ շերտի հաստությունը, սովորաբար, աստղի շառավղի համեմատությամբ շատ փոքր է (օրինակ, *Արեգակի* լուսոլորտի հաստությունը, մոտավորապես, 100—400 *կմ* է)։ Լուսոլորտից ցածր գտնվող և դիտումների համար անմատչելի շերտերում (դրանք պարունակում են էներգիայի աղբյուրներ) առաջացած էներգիան լուսոլորտի միջով տեղափոխվում է, հիմնականում՝ ճառագայթմամբ։ Էներգիայի աղբյուրների և կորուստների բացակայության հետևանքով հաստատուն պայծառության աստղերի լուսոլորտի յուրաքանչյուր տարրական ծավալի ճառագայթում կատարվում է այդ ծավալի կլանած էներգիայի հաշվին (ճ ա ռ ա գ ա յ թ ա յ ի ն հ ա վ ա ս ա ր ա կ շ ռ ու թ յ ու ն)։ Լուսոլորտից վեր շ ր ջ ո ղ շ ե ր տ ն է, որտեղ առաջանում է աստղի գծային սպեկտրը։ Մ. ա. հասկացությունը երբեմն նույնացվում է շրջող շերտի հետ։ Այս շերտի և լուսոլորտի միջև խիստ սահման գոյություն չունի։ Մ. ա-ի տեսությունն ստեղծվել է XX դ. սկզբին՝ Շվարցշիլդի, Միլնի, Էդինգտոնի հիմնարար աշխատանքներում։ Մ. ա-ի մոդելների կառուցումը (ջերմաստիճանի, խտության, ճնշման և մթնոլորտի ֆիզիկական այլ բնութագրերի ըստ խորության ունեցած բաշխման հաշվումը) թույլ է տալիս տեսականորեն ստանալ աստղի ճառագայթման սպեկտրը։ Տեսական և դիտումներից ստացված սպեկտրների համեմատությունը ծառայում է որպես տեսության հիմքում ընկած ենթադրությունների արդարացիության չափանիշ, ինչպես նաև թույլ է տալիս եզրակացություններ անել աստղերի մթնոլորտում գոյություն ունեցող ֆիզիկական պայմանների մասին։ Աստղերի վերաբերյալ տեղեկությունների մեծ մասը (քիմ. բաղադրություն, շարժումներ մթնոլորտում, աստղերի պտույտ, մագնիսական դաշտեր) ստացված է սպեկտրների ուսումնասիրման միջոցով։ Աստղերի արտաքին շերտերում ամենատարածված քիմ. տարրը ջրածինն է, դրան հետևում են հելիումը, ապա՝ ածխածինը, ազոտը և թթվածինը։ Բոլոր մետաղների ատոմների թիվը կազմում է ջրածնի ատոմների թվի մոտավորապես 0,0001 մասը։ Աստղերի մթնոլորտի քիմ. բաղադրությունն ընդհանուր առմամբ նույնն է, սակայն դիտվում են նաև քիմ. տարրերի անոմալ պարունակությամբ աստղեր։ Այդ շեղումները երբեմն պայմանավորված են քիմ. բաղադրության տարբերությամբ, սակայն որոշ դեպքերում (մագնիսական աստղեր, կրկնակի աստղեր) անոմալիան մթնոլորտի վիճակի առանձնահատկությունների հետևանք է։ Մ. ա-ի տեսության կարևորագույն հարցերից է անընդհատ սպեկտրում կլանման բնույթի բացահայտումը։ *Ջերմ աստղերում* ճառագայթային էներգիայի կլանումը հիմնականում ջրածնային է։ Ջերմաստիճանի հետագա բարձրացմանը զուգընթաց (շատ ավելի ջերմ աստղերում) էական են դառնում հելիումով պայմանավորված կլանումն ու ազատ էլեկտրոններով ցրումը։ Սառը աստղերում կլանում են, հիմնականում, ջրածնի բացասական իոնները։ Երկրին ամենամոտ աստղի՝ Արեգակի մթնոլորտում կարելի է առանձնացնել մթնոլորտային երկու շերտ ևս. գ ու ն ո լ ո ր տ ը (մոտ 15000 *կմ* հաստությամբ), որը տալիս է առքման գծային սպեկտր և ա ր և ա պ ս ա կ ը (տարածվում է արեգակնային մի քանի շառավղի չափով), որը տալիս է ինչպես առքման, այնպես էլ կլանման գծային սպեկտրներ։ Անընդհատ ճառագայթման առաջացման մեջ գունոլորտի և արևապսակի դերը չնչին է սպեկտրի տեսանելի տիրույթում, բայց ուլտրամանուշակագույն և ռադիոտիրույթներում դառնում է բավական մեծ։ Մյուս աստղերի մթնոլորտում գունոլորտ և պսակ անմիջականորեն չեն դիտվել, սակայն որոշ տվյալներ խոսում են դրանց գոյության մասին։

*Գրկ.* Амбарцумян В. А. и др., Теоретическая астрофизика, М., 1952; Аллер Л. Х., Астрофизика, пер. с англ., т. 1—2, М., 1955—57; Соболев В. В., Курс теоретической астрофизики, 2 изд., измен., М., 1975.
*Ա. Նիկողոսյան*

**ՄԹՆՈԼՈՐՏ ՄՈԼՈՐԱԿՆԵՐԻ**, *մոլորակները* շրջապատող գազային թաղանթ։ Արեգակնային համակարգի բոլոր մոլորակները, բացառությամբ թերևս Պլուտոնի, ունեն մթնոլորտ։ Մթնոլորտ ունեն նաև Յուպիտերի և Սատուրնի արբանյակներից մի քանիսը։ Որոշ մոլորակների (օրինակ, Վեներա, Յուպիտեր) մթնոլորտի խտությունն այնքան մեծ է, որ դրանց մակերևույթներն անմիջականորեն չեն դիտվում։ Այդ դեպքում մոլորակները դիտվում են շնորհիվ Մ. մ-ից արեգակնային ճառագայթման որոշ մասի անդրադարձման։ Նոսր մթնոլորտի դեպքում (օրինակ,

Մարս) անդրադարձումը կատարվում է նաև մոլորակի մակերևույթից: Անդրադարձած ճառագայթումը հնարավորություն է տալիս պատկերացում կազմել Մ. մ-ի քիմ. բաղադրության և ֆիզիկական հատկությունների մասին: Մ. մ-ի վերաբերյալ մեծ քանակությամբ գիտական տեղեկություններ են ստացվել շնորհիվ սովետական և ամերիկյան *ավտոմատ միջմոլորակային կայանների* թռիչքների: Մասնավորապես, դրանց օգնությամբ է հայտնագործվել *Մերկուրիի* չափազանց նոսր մթնոլորտը:

*Գրկ.* Мороз В. И., Физика планет, М., 1967; Брандт Дж., Ходж П., Астрофизика солнечной системы, пер. с англ., М., 1967; Ксанфомалити Л. В., Планеты открытые заново, М., 1978.

*Ա. Նիկողոսյան*

**ՄԹՆՈԼՈՐՏԱՅԻՆ ԷԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, 1. *մթնոլորտում* տեղի ունեցող էլեկտրական երևույթների և պրոցեսների համախումբ, 2. մթնոլորտի ֆիզիկայի բաժին, որն ուսումնասիրում է էլեկտրական երևույթները մթնոլորտում և դրա էլեկտրական հատկությունները: Մթնոլորտն օժտված է ժամանակի ընթացքում փոփոխվող և բարձրությունից կախված էլեկտրահաղորդականությամբ, որը պայմանավորված է մթնոլորտում դրական և բացասական լիցքերի՝ իոնների, առկայությամբ: Իոնների թիվը կախված է իոնիչների ներգործությունից: *Տրոպոսֆերայում* այդպիսի իոնիչներ են տիեզերական ճառագայթները, երկրապարների և մթնոլորտի ռադիոակտիվ ճառագայթումը, իսկ մթնոլորտի ավելի բարձր շերտերում՝ Արեգակի ուլտրամանուշակագույն և այլ ճառագայթները:

Չխախտված մթնոլորտային պայմաններում (պարզ եղանակ) էլեկտրական դաշտի լարվածությունը մթնոլորտում հավասար է 130 *վ/մ* և բարձրության հետ նվազում է էքսպոնենտային օրենքով: Երկրի մակերևույթից մոտ՝ 300—3000 *մ* հաստության շերտում, որտեղ կուտակվում են աերոզոլները, էլեկտրական դաշտի լարվածությունը կարող է աճել բարձրությունից կախված: Դաշտի լարվածությունը կախված է մի շարք օդերևութաբանական գործոններից՝ օդի խոնավությունից, թափանցիկությունից, քամու արագությունից ևն: Լարվածությունը լայն սահմաններում փոփոխվում է ամպրոպների, հորդ անձրևների, ձյունահողմերի ժամանակ:

Մ. է-յան ուսումնասիրությունը էապես նպաստում է ռադիոակտիվ հանքաքարերի և աղբյուրների որոնման և շանթապաշտպանության միջոցառումների մշակման գործին:

**ՄԹՆՈԼՈՐՏԱՅԻՆ ՃԱԿԱՏ**, անցողիկ նեղ զոնա օդային զանգվածների (հիմնականում տաք և ցուրտ) միջև: Բնորոշվում է ջերմաստիճանի և օդերևութաբանական այլ տարրերի կտրուկ փոփոխումներով: Լինում են արկտիկական՝ արկտիկական և միջին լայնությունների, բևեռային՝ միջին լայնությունների և արևադարձային, արևադարձային՝ արևադարձային և հասարակածային օդային զանգվածների միջև ճակատներ: Մ. ճ-ի լայնությունը մի քանի տասնյակ *կմ* է, հաստությունը՝ մի քանի հարյուր մետր: Մ. ճ. աննշան թեքված է դեպի Երկրի մակերևույթը, որի ստորին մասում սեպի ձևով, գտնվում է ցուրտ, վերևում՝ տաք օդը: Թեքությունը պայմանավորված է տաք և ցուրտ օդային զանգվածներում Մ. ճ-ի ճնշման գրադիենտի ըստ բարձրության փոփոխության տարբերությամբ և *Կորիոլիսի ուժի* ազդեցությամբ: Տաք և ցուրտ օդային զանգվածների որոշակի դասավորության հետևանքով Մ. ճ-ում նկատվում է ինվերսիա կամ իզոթերմիա, երբեմն էլ՝ ջերմաստիճանի ըստ բարձրության անոմալ թույլ անկում: Մ. ճ. տեսականորեն դիտարկվում է որպես բաժանման մակերևույթ (ճակատային մակերևույթ) օդային զանգվածների միջև: Ճակատային մակերևույթի թեքության հետևանքով Երկրի մակերևույթի հետ նրա հատման գիծը կոչվում է ճակատային գիծ: Մ. ճ. բաժանվում է 3 հիմնական տիպի՝ տաք, ցուրտ և օկլյուզիային: Տաք են կոչվում այն Մ. ճ-ները, որոնց թիկունքում գտնվում է համեմատաբար տաք օդը, ցուրտ՝ երբ թիկունքում գտնվում է ցուրտ օդը: Մ. ճ-ները հիմնականում առաջանում են ցիկլոններում, որտեղ, որպես կանոն, ցուրտ Մ. ճ-ները շարժվում են ավելի արագ, քան տաքերը: Շարժման արագությունների տարբերությունները հանգեցնում են նրան, որ երբեմն ցուրտ Մ. ճ. հասնում է տաքին, միաձուլվում նրա հետ: Արդյունքում առաջացած կոմպլեքսային Մ. ճ. կոչվում է օկլյուզիային: Տարբերում են ցուրտ և տաք տիպի օկլյուզիային Մ. ճ.: Երբ ցուրտ Մ. ճ-ի թիկունքում գտնվող օդը ավելի տաք է, քան տաք Մ. ճ-ի առջևում գտնվող օդը, օկլյուզիային ճակատը համարվում է տաք տիպի, իսկ երբ ցուրտ Մ. ճ-ի թիկունքում գտնվող օդի ջերմաստիճանը ավելի ցածր է, քան տաք Մ. ճ-ի առջևում գտնվող օդինը՝ ցուրտ տիպի: Մ. ճ-ներն առաջացնում են իրենց տիպերին հատուկ ամպային համակարգեր (տես *Ամպամածություն* և *Մթնոլորտային տեղումներ*):

**ՄԹՆՈԼՈՐՏԱՅԻՆ ՃՆՇՈՒՄ**, մթնոլորտում գտնվող առարկաների և Երկրի մակերևույթի վրա գործող օդի ճնշում: Մթնոլորտի վիճակի կարևորագույն բնութագիրն է, հավասար է մթնոլորտի տվյալ մակարդակից մինչև նրա վերին սահմանը տարածված օդի միավոր մակերեսով սյան կշռին: Չափվում է *բարոմետրով*, արտահայտվում՝ միլիբարերով (*մբ*, 1 *մբ*= 1000 *դին/սմ²*), բարոմետրի սնդիկի սյան բարձրությամբ (*մմ սնդ. ս.*) *նյուտոններով* 1 *մ²* մակերեսի վրա (*ն/մ²*), *պասկալներով* ևն:

Ծովի մակարդակի վրա Մ. ճ. միջին արժեքը 1013,25 *մբ* կամ 760 *մմ սնդ. ս.* է (0°C, 45° լայնության տակ), որն ընդունված է որպես ճնշման «նորմալ» մեծություն: Մ. ճ. նվազում է ըստ բարձրության (տես *Բարոմետրիկ բանաձև*): Նվազման առավել ինտենսիվությունը նկատվում է ստորին շերտերում. 5 *կմ* բարձրության վրա Մ. ճ. հավասար է ծովի մակարդակի վրա եղած արժեքի մոտ կեսին: Դրա պատճառը օդի խտության բաշխումն է ըստ բարձրության: Մ. ճ. անհավասար է բաշխվում նաև հորիզոնական ուղղությամբ, որը տեղի է ունենում ինչպես օրինաչափ պարբերությամբ, այնպես էլ ոչ օրինաչափ: Վերջինս, որը հաճախ է դիտվում, հիմնականում կախված է մթնոլորտի ընդհանուր շրջանառության պայմաններից: Քանի որ ցուրտ օդային զանգվածներում բարձր խտության հետևանքով Մ. ճ-ի անկումն ըստ բարձրության տեղի է ունենում ավելի արագ, քան տաք զանգվածներում, ուստի առաջին դեպքում տրոպոսֆերայի ստորին շերտերում առաջանում է ցածր ճնշման շրջան, իսկ երկրորդ դեպքում՝ բարձր: Դրա ճիշտ հակառակ պատկերը տեղի է ունենում երկրամերձ շերտերում: Ծովի մակարդակի վրա Մ. ճ-ի տատանման ծայրագույն արժեքները հասնում են մինչև 1080 *մբ* (Ասիական անտիցիկլոնում) և 887 *մբ* (արևադարձային ցիկլոններում): Օրվա ընթացքում դիտվում են Մ. ճ-ի երկու առավելագույն (9—10 և 21—22 ժամերին) և երկու նվազագույն (3—4 և 13—16 ժամերին) արժեքներ:

**ՄԹՆՈԼՈՐՏԱՅԻՆ ՏԵՂՈՒՄՆԵՐ**, ամպերից թափվող հեղուկ կաթիլային կամ պինդ վիճակի ջուր (անձրև, ձյուն, կարկուտ ևն), ինչպես նաև երկրի մակերևույթի կամ առանձին առարկաների վրա նստած, օդից անջատված ջուր (ցող, եղյամ, մերկասառույց ևն): Առաջինները կոչվում են ուղղաձիգ Մ. տ., իսկ երկրորդները՝ հորիզոնական: Մ. տ-ի քանակը չափում են թ ա փ վ ա ծ ջրի շերտի բարձրությամբ, արտահայտված *մմ*-ով, ինտենսիվությունը՝ *մմ*-ով րոպեում, ժամում, օրում: Երկրագնդի վրա տարվա ընթացքում թափվող Մ. տ-ի միջին քանակը մոտ 1000 *մմ* է (ավելի քան 500 հզ. *կմ³* ջուր): Մ. տ. տարածական բաշխումը խիստ անհամաչափ է և կախված է մթնոլորտի ընդհանուր շրջանառությունից: Այսպես, արևադարձային գոտում Մ. տ-ի տարեկան միջին քանակը գերազանցում է 1000 *մմ*-ից, որոշ վայրերում հասնում մինչև 12000 *մմ*, իսկ մերձարևադարձային գոտում (պասսատների զոնայում) և բարեխառն գոտու անապատներում չի գերազանցում 250 *մմ*-ից: Բարեխառն գոտում Մ. տ-ի տարեկան քանակը տատանվում է 250—1000 *մմ*-ի սահմաններում, իսկ աշխարհագրական բարձր լայնություններում՝ 250 *մմ*-ից պակաս: Մ. տ. տարածական բաշխման պրոցեսում զգալի դեր են խաղում նաև տեղանքի լեռնագրությունը և ռելիեֆի դիրքադրությունը: Լեռները դանդաղեցնում են ցիկլոնների շարժման արագությունը և նպաստում Մ. տ-ի տևողության մեծացմանը: Մ. տ-ի քանակը հողմակողմ լանջերին ավելի է, քան հողմատակ լանջերին: Ըստ տարեկան ընթացքի տարբերում են Մ. տ-ի հետևյալ տիպերը՝ հասարակածային (առավելագույն արժեքը նկատվում է գարնանային և աշնանային օրահավասարումներից հետո), արևադարձային (ամառային առավելագույն արժեքով), մուսսոնային (ամռանը խիստ ցայտուն արտահայտված առավելագույն արժեքով և չոր ձմեռով), մերձարևադարձային կամ միջերկրածովյան (ձմռան առավելագույն արժեքով և չոր ամառով): Մ. տ. Երկրի վրա ջրի շրջանառության օղակներից մեկն է:

**ՄԹՆՈԼՈՐՏԻ ՃԱՌԱԳԱՅԹՈՒՄ**, մթնոլորտի սեփական ինֆրակարմիր (4—120 *մկմ*

երկարության) ճառագայթում: Ուժգնության առավելագույն արժեքը նկատվում է ալիքի 14,5 *մկմ* երկարության և 200K պայմաններում: Մ. ճ-ման մեծ մասը (մոտ 70%) ուղղված է դեպի երկրի մակերևույթը և կոչվում է մթնոլորտի հանդիպակաց ճառագայթում: Մնացած մասը ուղղված է դեպի տիեզերական տարածություն և կոչվում է հեռացող ճառագայթում: Վերջինով է պայմանավորված Երկրի մոլորակի ջերմության կորուստը:

**ՄԹՆՈԼՈՐՏԻ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆ** ը ն դ հ ա ն ու ր, Երկրագնդի վրա մոլորակային մասշտաբի օդային հոսանքների համակարգ: Տրոպոսֆերայում Մ. շ. օղակների շարքին են դասվում *պասսատները*, *մուսսոնները*, ցիկլոնային և անտիցիկլոնային գործունեությամբ պայմանավորված օդային հոսանքները, ստրատոսֆերայում՝ օդային զանգվածների գերազանցապես զոնալ (արմ. և արլ.) տեղափոխությունները: Մ. շ. կլիմայի կազմավորման կարևորագույն պրոցեսն է: Եղանակի փոփոխությունները բնորոշվում են ոչ միայն երկրի մակերևույթի և մթնոլորտի միջև գոյություն ունեցող տեղական մասշտաբի ջերմա- և ջրապտույտի, այլև Մ. շ-յան պայմաններով: Մ. շ. պայմանավորված է *մթնոլորտային ճնշման* անհավասարաչափ բաշխմամբ (բարիկական գրադիենտի առկայությամբ), որն ամենից առաջ արդյունք է արեգակնային ճառագայթման անհավասարաչափ հոսքի (ըստ աշխարհագրական լայնությունների) և հատկապես ծովային ու ցամաքային տարածությունների ստորաբաժանման հետ կապված երկրի մակերևույթի ֆիզիկական հատկությունների տարբերության: Երկրի մակերևույթի վրա ջերմության անհավասարաչափ բաշխումը և դրա հետևանքով առաջացած տարբեր ինտենսիվության ջերմափոխանակությունը հանգեցնում են Մ. շ-յան մշտական գոյությանը: *Կորիոլիսի ուժի* շնորհիվ օդի շարժումը Մ. շ-յան մեջ դառնում է քվազիգեոստրոֆիկական, այսինքն՝ մեծ մասամբ (բացառությամբ մերձարևադարձային լայնությունների և սահմանային շերտի) բավական մոտ է գեոստրոֆիկական քամուն: Վերջինս ուղղված է իզոբարների ուղղությամբ, այսինքն՝ բարիկական գրադիենտներին ուղղահայաց: Երկրամերձ շերտերում (մինչև 1—1,5 *կմ* բարձրության վրա) քամին, շփման ուժի ազդեցության հետևանքով, զգալիորեն տարբերվում է գեոստրոֆիկական քամուց ինչպես արագությամբ, այնպես էլ ուղղությամբ: Սակայն 5 *կմ*-ից վեր, որտեղ ցամաքների, ծովերի և *ցիկլոնների* ու *անտիցիկլոնների* գործունեության ազդեցությունը թուլանում է, հաստատվում է օդի զոնալ (արմ—արլ.) տեղափոխություն համարյա ամբողջ Երկրագնդի վրա: Բացառություն է կազմում միայն հասարակածային գոտին, որտեղ զոնալ շարժումը, պայմանավորված ցածր ճնշման դաշտերի առկայությամբ, ունի արլ. ուղղություն (նկ. 1): Ստորին տրոպոսֆերայում և երկրամերձ շերտերում ճնշման զոնալ բաշխումն ավելի բարդ է, որովհետև այն պայմանավորված է հիմնականում ցիկլոնային և անտիցիկլոնային գործունեությամբ: Ցիկլոնները շարժվում են հիմնականում դեպի արլ., շեղվելով դեպի ավելի բարձր, իսկ անտիցիկլոնները՝ ավելի ցածր լայնություններ: Դրանով է պայմանավորված երկրամերձ շերտերում գոյություն ունեցող հասարակածային գոտու ցածր ճնշման, մերձարևադարձային գոտու 2 բարձր, մերձբևեռային գոտու 2 ցածր և բևեռային գոտու 2 բարձր ճնշման զոնաները (նկ. 2): Իրական մթնոլորտի պայմաններում Մ. շ. շատ ավելի բարդ է, կախված ջերմային աղբյուրների և ցիկլոնային ու անտիցիկլոնային գործունեության սեզոնային բաշխումից, շարունակ փոփոխվում է: Այդ փոփոխությունները (հատկապես ցիկլոնային և անտիցիկլոնային գործունեության) առաջ են բերում միջօրեականի ուղղությամբ օդի տեղաշարժեր, որոնք պասսատների, անտիպասսատների և մուսսոնային հոսանքների ձևով խախտում են Մ. շ-յան նկարագրված պարզ պատկերը: Ջերմափոխանակությունը վերջին դեպքում ավելի ինտենսիվ է: Մ. շ-յան առավել ընդհանուր և կայուն հատկանիշները ուսումնասիրելու համար օգտագործվում են մթնոլորտի տարբեր բարձրության շերտերի ճնշման և քամիների երկարամյա դիտարկումների միջին տվյալները: Դրան զուգընթաց օդերևութաբանական քարտեզների միջոցով ուսումնասիրվում է նաև Մ. շ-յան օրական փոփոխությունների ռեժիմը: Դրանք հնարավորություն են տալիս առանձնացնել Մ. շ-յան տիպերը և պարզել նրանց կրկնման ու ձևափոխման հաճախականությունը, որոնք կարևոր են եղանակի երկարատև կանխատեսումների համար: Տարբերում են նաև Մ. շ. տ ե ղ ա կ ա ն, որն ընդգրկում է աշխարհագրական պայմաններով սահմանափակված նեղ շրջանների օդային հոսանքները՝ *լեռնահովտային քամիներ*, *բրիզներ*:

Մթնոլորտի ընդհանուր շրջանառության զոնալ սխեմա




Նկ. 1. վերին տրոպոսֆերայում և ստորին ստրատոսֆերայում

Նկ. 2. երկրամերձ շերտում

Գրկ. Погосян Х. П., Общая циркуляция атмосферы, Л., 1972.

Գ. *Ալեքսանդրյան*

**ՄԹՆՈԼՈՐՏԻ ՍԱՆԻՏԱՐԱԿԱՆ ՊԱՀՊԱՆՈՒԹՅՈՒՆ**, օ դ ա յ ի ն ա վ ա զ ա ն ի ս ա ն ի տ ա ր ա կ ա ն պ ա հ պ ա ն ու թ յ ու ն, օրենսդրական, կազմակերպչական և սանիտարատեխնիկական միջոցառումների համալիր, որի նպատակն է մթնոլորտի պաշտպանումը վնասակար թափոններից: Մթնոլորտի մաքրության և մաքրիչ կառույցների աշխատանքի հսկողությունն իրականացնում է սանիտարա-համաճարակային ծառայությունը: Մթնոլորտը համարվում է մաքուր, եթե վնասակար նյութերի կոնցենտրացիան չի գերազանցում սահմանային թույլատրելի կոնցենտրացիային: Օդի կեղտոտման հիմնական պատճառների և ՍՍՀՄ-ում դրանց դեմ պայքարի միջոցառումների վերաբերյալ մանրամասն տես *Սանիտարապաշտպանական գոտի*, *Օդ* և *Օդային ավազան* հոդվածներում:

Սոցիալիստական բազմաթիվ երկրներում Մ. ս. պ-յան միջոցառումներն անցկացվում են այնպես, ինչպես ՍՍՀՄ-ում: Կապիտալիստական որոշ երկրներում (Մեծ Բրիտանիա, ԱՄՆ ևն) օրենսդրությամբ հաստատված են թափոնների սահմանափակում, վնասակար նյութերի սահմանային թույլատրելի կոնցենտրացիա, սակայն միասնական համակարգ գոյություն չունի:

**ՄԹՆՈԼՈՐՏԻ ՍՏՐԱՏԻՖԻԿԱՑԻԱ** (< լատ. stratum — շերտ և facio — անել, կատարել), մ թ ն ո լ ո ր տ ի ջ ե ր մ ա յ ի ն ս տ ր ա տ ի ֆ ի կ ա ց ի ա, օդի ջերմաստիճանի բաշխումն ըստ բարձրության: Բնութագրվում է ջերմաստիճանի ուղղաձիգ գրադիենտով γ (1°/100 *մ*), պայմանավորում կոնվեկտիվ հոսանքների զարգացումը և ուժգնությունը: Տրոպոսֆերայում γ=0,6°/100 *մ*: Որքան արագ է նվազում օդի ջերմաստիճանն ըստ բարձրության, այնքան մեծ է կոնվեկտիվ հոսանքների ուժգնությունը: Մ. ս. կարող է լինել կայուն, անկայուն և անտարբեր: Մ. ս. համարվում է կայուն, երբ ադիաբատորեն վեր բարձրացող օդային մասնիկի ջերմաստիճանն ըստ բարձրության ավելի արագ է նվազում, քան շրջապատի օդինը, այսինքն՝ երբ օդային մասնիկի ջերմաստիճանային գրադիենտը ($\gamma_a$) մեծ է շրջապատի օդի գրադիենտից (γ): Սա նշանակում է, որ Արքիմեդի օրենքի համաձայն տաք օդի մասնիկը բարձրանում է, իսկ սառինը՝ իջնում, այնքան ժամանակ, քանի դեռ նրանց ջերմաստիճանը չի հավասարվել շրջապատի օդի ջերմաստիճանին: Երբ բարձրացող օդային մասնիկի ջերմաստիճանային գրադիենտը փոքր է շրջապատի օդի գրադիենտից, ապա ինքնահոսքի թողած օդային մասնիկը կշարունակի իր վերընթացը: Այս դեպքում Մ. ս. կոչվում է անկայուն: Մ. ս. համարվում է անտարբեր, երբ $\gamma_a=\gamma$: Մ. ս-ի նշված պայմանները ուժի մեջ են չոր և ջրային գոլորշիներով հագեցած օդի համար, սակայն վերջին դեպքում ջերմաստիճանային գրադիենտները հաշվարկում են խոնավ օդի պայմաններից ելնելով:

**ՄԹՆՈԼՈՐՏԻ ՖԻԶԻԿԱ**, տես *Օդերևութաբանություն*:

**ՄԺԵԺ** (հուն. Μιζίζιος) (ծն. թ. անհտ.— մոտ 668), VII դարի հայազգի բյուզանդական ռազմական գործիչ: 668-ին *Կոստաս II*-ին սպանած դավադիրները Մ-ին Սիկիլիայում հռչակել են Բյուզանդիայի կայսր: Ըստ մի վարկածի, դավադրության կազմակերպիչը և կայսրին սպանողը եղել է Մ.: Կոստաս II-ի որդի Կոստանդինը (ապագա Կոստանդին IV) մեծ նավատորմով եկել է Սիկիլիա, ձերբակալել Մ-ին ու մյուս դավադիրներին և մահապատժի ենթարկել:

Հ. *Բարթիկյան*

**ՄԺԵԺ ԳՆՈՒՆԻ** (ծն. թ. անհտ.—մոտ 548), Հայաստանի մարզպան՝ մոտ 517-ից: Սկզբում իշխել է Սասունում: VI դ. սկզբին, երբ հոներն ասպատակեցին Հայաստանը, Մ. Գ. միավորեց հայկ. որոշ իշխանների զորուժը և ջախջախեց հոներին: Այս հաղթանակի համար պարսից արքան նրան նշանակեց Հայաստանի մարզպան: Մ. Գ-ու օրոք Հայաստանում տիրել է խաղաղություն:

**ՄԺԵԺ ԳՆՈՒՆԻ** (ծն. և մահ. թթ. անհտ.), VII դարի հայազգի բյուզանդական զորավար: *Հերակլիոս* կայսրը 629-ին Մ. Գ-ուն նշանակել է կայսրության արլ. շրջանների կառավարիչ: Միջամտել է Հայաստանի՝ պարսից տիրապետության տակ գտնվող մասի ներքին գործերին: Մասնակցել է Հերակլիոսի դեմ դավադրության (դավադիրներից էին նաև հայ իշխաններ Վահան Խորխոռունին, Դավիթ Սահառունին ևն) ճնշմանը: Մ. Գ-ուն սպանել են Բյուզանդիայում ծառայող հայ զինվորականները՝ Դավիթ Սահառունու գլխավորությամբ:

Հ. *Բարթիկյան*

**ՄԺԵՂՆԵՐ** (Simuliidae), երկթևանիների կարգի արյունածուծ միջատների ընտանիք: Մարմնի երկարությունը 1,5—7 *մմ* է: Կուրծքը սապատավոր է, հանգիստ վիճակում թևերը ծալվում են իրար վրա: Թրթուրը և հարսնյակը զարգանում են հոսող ջրերում: Ձմեռում են ձվերը, երբեմն՝ թրթուրները: Տարեկան տալիս են 1—4 սերունդ: Արուները սնվում են բույսերի հյութով, էգերը սովորաբար արյունածուծ են: Թուքը թունավոր է: Ակտիվ են առավոտյան և երեկոյան ժամերին: Մ. մարդու և ընտանի կենդանիների ճիճվային և վարակիչ հիվանդությունների հարուցիչների փոխանցողներ են (օնխոցերկոզ, տուլարեմիա ևն): Հայտնի է Մ-ի

Մժեղ

ավելի քան 1200 տեսակ (ՍՍՀՄ-ում՝ 300): ՀՍՍՀ ցածրադիր վայրերում տարածված Մ. տարեկան տալիս են 2—4 սերունդ: Յուրաքանչյուր սերնդի զարգացման տևողությունը 18—25 օր է: Լեռնային բարձրադիր շրջանների հոսող ջրերում տալիս են 1 սերունդ, որի զարգացման տևողությունը 80—105 օր է: ՀՍՍՀ-ում առավել վտանգավոր են Wilhelmia paraequina, W. mediterranea, Odagmia kiritschenkoi, Od. caucasica, Testisimulium condici տեսակները: Պայքարի միջոցները՝ ինսեկտիցիդներ և վախեցնող նյութեր՝ ռեպելենտներ:

Հ. *Տերտերյան*

**ՄԺՂՈՒԿՆԵՐ** (Ceratopogonidae կամ Heleidae), երկթևանիների կարգի միջատների ընտանիք: Մարմնի երկարությունը 1—2,5 *մմ* է: Բեղիկները 13—15-հատվածանի են, թևերը՝ սովորաբար խայտաբղետ են, մազածածկ և բծավոր: Մ-ի թրթուրները

Մժղուկ

և հարսնյակները զարգանում են առվակներում, լճակներում, խոնավ հողում: Ձմեռում են թրթուրները: Հասուն ձևերն ի հայտ են գալիս ապրիլ—մայիսին: Մ. սնվում են բույսերի հյութով, արյունածուծ տեսակները (միայն էգերը)՝ մարդու և կենդանիների արյունով: Տարածված են ամենուրեք, գլխավորապես անտառներում: Հայտնի է Մ-ի 1000 տեսակ (մի քանի հարյուրը արյունածուծ են), ՀՍՍՀ-ում՝ մոտ 45 տեսակ, որից առավել տարածված են արյունածուծ Culicoides սեռի C. pulicaris, C. riethi, C. puncticollis և C. fascipennis տեսակները: Արյունածուծ Մ. մարդու և կենդանիների մակաբույծ որդերի միջանկյալ տերեր են: Պայքարի միջոցները՝ վախեցնող նյութեր՝ ռեպելենտներ:

**ՄԺՆԿԵՐՏ**, Մաժանկերտ, Պժընկերտ, Մցնկերտ, բերդաքաղաք Մեծ Հայքի Այրարատ նահանգի Աբեղյանք գավառում: XIII դ. սկզբից մտել է Զաքարյանների իշխանության կազմի մեջ: Մ. եղել է նույնանուն գավառի կենտրոն, ուր նստում էր նաև եպիսկոպոսը: Այնուհետև այն գրավել են մոնղոլ-թաթարները, XVI դ. սկզբին՝ Օսմանյան Թուրքիան: Եղել է Էրզրումի վիլայեթի սանջակի կենտրոն: XIX դ. սկզբին ուներ 500 տուն հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ, արհեստներով և առևտրով: Նրանք թուրք. կառավարության հարուցած բռնությունների, խտրականության պատճառով XIX դ. 2-րդ կեսին հեռացել են տարբեր վայրեր: XX դ. սկզբին, Մ. անշուք գյուղ էր Էրզրումի վիլայեթի Խնուս գավառում: 1909-ին ուներ ընդամենը 5 տուն հայ բնակիչ, որոնք զոհ գնացին 1915-ին երիտթուրքական կառավարողների կազմակերպած ջարդերին:

**«ՄԻ ՔԱՅԼ ԱՌԱՋ, ԵՐԿՈՒ ՔԱՅԼ ԵՏ** (Ճգնաժամը մեր կուսակցության մեջ)», Վ. Ի. Լենինի աշխատությունը, որի մեջ նա զարգացրել է պրոլետարական կուսակցության մասին մարքսիստական ուսմունքը, մշակել *բոլշևիզմի* կազմակերպական հիմունքները: Գրվել է 1904-ի փետրվար—մայիսին, լույս է տեսել մայիսին, Ժնևում: Գրքում Վ. Ի. Լենինը խոր վերլուծության է ենթարկել *ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի* (1903) փաստաթղթերը և հետհամագումարյան իրադարձությունները, բացահայտել բոլշևիկների և մենշևիկների միջև ծագած տարաձայնությունների սկզբունքային բնույթը: Կուսակցության II համագումարը խոշոր առաջընթաց քայլ էր հեղափոխական մարքսիստական կուսակցության ստեղծման ճանապարհին: Մինչդեռ մենշևիկները չենթարկվեցին համագումարի որոշումներին, դրանով իսկ խորացնելով պառակտումը, կուսակցությունը ետ շպրտելով դեպի նախահամագումարյան շրջանը: Մենշևիկները ժխտում էին կուսակցության, որպես բանվոր դասակարգի առաջավոր, գիտակից և կազմակերպված ջոկատի վերաբերյալ լենինյան դրույթը, չէին ընդունում *դեմոկրատական ցենտրալիզմի* սկզբունքը, կուսակցության միասնության և երկաթյա կարգապահության անհրաժեշտությունը: Լենինը համոզիչ փաստարկներով, գիտական խորությամբ ու սրությամբ քննադատեց մենշևիկների հայացքները և ցույց տվեց, թե ինչպիսին պետք է լինի նոր տիպի կուսակցությունը: Մարքսիստական կուսակցությունը բանվոր դասակարգի առաջավոր, գիտակից, կազմակերպված ջոկատն է, զոդված կամքի, գործողությունների և կարգապահության միասնությամբ: Նրա «...պարտականությունն է՝ ավելի ու ավելի լայն խավեր բարձրացնել մինչև այդ առաջավոր մակարդակը» (Երկ. լիակտ. ժող., հ. 8, էջ 305): Հակառակ մենշևիկների, որոնք գտնում էին, թե յուրաքանչյուր գործադուլավոր կարող է մտնել կուսակցության մեջ, Լենինը ցույց տվեց, որ կուսակցությունը կազմակերպված ամբողջություն է, որն էլ հենց նրա ուժն է: 1902-ին Լենինը գրում էր, թե «...տվեք մեզ ռևոլյուցիոներների կազմակերպություն, և մենք շո՛ւռ կտանք Ռուսաստանը» (նույն տեղում, հ. 6, էջ 161), իսկ 1904-ին ընդգծում, թե «Իշխանության համար մղվող պայքարում պրոլետարիատը այլ զենք չունի, բացի կազմակերպությունից» (նույն տեղում, հ. 8, էջ 510):

Կոմունիստական կուսակցության կարևորագույն կազմակերպական սկզբունքներից մեկը դեմոկրատական ցենտրալիզմն է: Նման սկզբունքով կուսակցության ստեղծումը նշանակում էր «...գաղափարների հեղինակության վերածում իշխանության հեղինակության, պարտիական ստորին ինստանցիաների ենթարկում բարձրագույն ինստանցիաներին» (նույն տեղում, էջ 447): Ցարիզմի պայմաններում, երբ կուսակցությունը գործում էր խորը ընդհատակում, հնարավոր չէր կուսակցական կազմակերպությունները կառուցել ներքևից վերև ընտրովիության և հաշվետվության սկզբունքով: Ինքնակալության տապալումից հետո կուսակցական կազմակերպությունները ամբողջովին կառուցվեցին դեմոկրատական ցենտրալիզմի հիման վրա: Լենինն իր աշխատությունը եզրափակում է. «Բուրժուական աշխարհում տիրող անարխիական մրցության գերիշխանության պայմաններում բաժան-բաժան, կապիտալի համար կատարվող հարկադրական աշխատանքից ճզմված, շարունակաբար լիակատար թշվառության, վայրենացման և այլասերման «հատակը» նետվող պրոլետարիատը կարող է դառնալ և անխուսափելիորեն կդառնա անպարտելի ուժ միայն շնորհիվ այն բանի, որ նրա գաղափարական միավորումը մարքսիզմի սկզբունքներով ամրապնդվում է այն կազմակերպության նյութական միասնությամբ, որ միլիոնավոր աշխատավորներ է միավորում, ստեղ-



Վ. Ի. Լենինի «Մի քայլ առաջ, երկու քայլ հետ» աշխատության հայերեն առաջին հրատարակության շապիկը

ծելով բանվոր դասակարգի բանակ: Այդ բանակին չի դիմանա ո՛չ ռուսական ինքնակալության զառամած իշխանությունը, ո՛չ միջազգային կապիտալի զառամող իշխանությունը» (նույն տեղում, էջ 510—511) մարգարեական խոսքերով:

Աշխատության պատմական նշանակությունը ամենից առաջ նրանում է, որ Լենինը գաղափարապես ջախջախեց մենշևիկներին, ինչպես նաև ամբողջ միջազգային օպորտունիզմը, մշակեց մարքսիստական կուսակցության կազմակերպական հիմունքները, որոնք հետագայում զարգացան ու հարստացան պատմական նոր պայմաններին, պահանջներին ու փորձին համապատասխան: Աշխատությունը առաջին անգամ հայերեն լույս է տեսել 1930-ին, Մոսկվայում, այնուհետև մինչև 1981-ը առանձին գրքով լույս է տեսել ևս 2 անգամ: *Ա. Բաղմանյան*

**ՄԻԱԲԱՆ**, տես *Տեր-Մկրտչյան* Գալուստ:

**ՄԻԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, 1. կաթոլիկ եկեղեցու՝ XVI դարի վերջին և XVII դարի սկզբին ստեղծված կրոնական կազմակերպություն: Յուրաքանչյուր Մ. ունի իր կանոնադրությունը՝ հաստատված Հռոմի պապի կամ եպիսկոպոսի կողմից: Չևականորեն Մ-ներն ունեն զուտ կրոնական կամ կրոնաբարեգործական նպատակներ, սակայն իրականում կենսագործում են Հռոմի կաթոլիկ եկեղեցու քաղ. ծրագրերը: 2. Մի քանի *վանքերի* միավորումը միասնական կառավարչության տակ: 3. Հռոմի պապին կից ղեկավար մարմիններ:

Հայաստանում Մ. է կոչվում մի վանքում միավորված կրոնավորների (անապատականների) ամբողջությունը՝ վանահոր ղեկավարությամբ: Վանական Մ-յան անդամները կոչվում են միաբան: Մ-ները ծավալել են նաև գիտակրթական գործունեություն: Հայագիտական բեղմնավոր գործունեությամբ հայտնի են Վենետիկի և Վիեննայի Միխիթարյանները (տես *Մխիթարյան միաբանություն*):

**ՄԻԱԲՅՈՒՐԵՂ**, անընդհատ բյուրեղային ցանցով և հատկությունների *անիզոտրոպությամբ* բնութագրվող առանձին համասեռ բյուրեղ: Արհեստականորեն աճեցնում են հալույթներից, լուծույթներից, գոլորշիներից, ինչպես նաև պինդ վիճակում գտնվող նյութից: Մ-ի արտաքին ձևը կախված է ատոմաբյուրեղական կառուցվածքից և *բյուրեղացման* պայմաններից: Գոյություն ունեն նաև բնական Մ-ներ, օրինակ, քվարցի, քարաղի, իսլանդական սպաթի, ալմաստի Մ-ները են: Արտաքին ներգործությունների (լույս, ջերմաստիճան, ճնշում են) ազդեցությամբ Մ-ները կարող են փոխել իրենց հատկությունները, այդ պատճառով դրանցից պատրաստված սարքերը լայնորեն կիրառվում են ռադիոէլեկտրոնիկայում, քվանտային էլեկտրոնիկայում, հաշվողական տեխնիկայում, ձայնագիտության մեջ: Տես նաև *Բյուրեղներ*:

*Գրկ.* Лодиз Р. А., Паркер Р. Л., Рост монокристаллов, пер. с англ., М., 1973.

**ՄԻԱԲՆԱԿՆԵՐ**, քրիստոնեական աստվածաբանական ուսմունքի (միաբնակության) հետևորդներ: Մ., ի հակադրություն *երկաբնակների*, ընդունում էին Հիսուս Քրիստոսի միայն աստվածային բնույթը: Միաբնակությունը ծնունդ է առել 431-ի Եփեսոսի տիեզերական ժողովից հետո: Կ. Պոլսի վանահայր Եվտիքեսը միաբնակության սկզբունքը հասցրեց ծայրահեղության (Քրիստոսի մեջ մարդկային բնությունը կլանված է աստվածայինով): Եվտիքեսյան Մ. 451-ի Քաղկեդոնի տիեզերական ժողովում քննադատվեցին, և հաստատվեց երկաբնակությունը: Ալեքսանդրիայի, Եփեսոսի, Ասորիքի, Պաղեստինի եկեղեցիները չընդունեցին Քաղկեդոնի որոշումները: Հայաստանյայց եկեղեցին 506-ի Դվինի եկեղեցական ժողովում դատապարտեց թե՛ եվտիքեսյաններին, թե՛ քաղկեդոնականներին՝ հավատարիմ մնալով 431-ի Եփեսոսի տիեզերական ժողովի վարդապետությանը, ըստ որի Հիսուս Քրիստոսի մեջ աստվածայինն ու մարդկայինը միավորված են անխառն ու անբաժանելի կերպով: Աստիճանաբար դավանաբանական հարցերի կողքին նշանակալի է դառնում միաբնակության քաղ. ուղղվածությունը՝ Բյուզանդական կայսրությունից արլ. մարզերի անջատման ձգտումը: Մ-ի և երկաբնակների հակադրությունը լուծելու փորձ էր *միակամություն*: Ներկայումս ուղղափառ միաբնակ են Հայաստանյայց առաքելական, Հակոբիկյան, Ղպտի, Եթովպական և Հնդիկ Մալաբար եկեղեցիները, որոնք հայտնի են նաև «Հնագույն արևելյան եկեղեցիներ» անունով:

**ՄԻԱԲՋԻՋ ՕՐԳԱՆԻԶՄՆԵՐ**, մեկ բջջից բաղկացած բուսական և կենդանական օրգանիզմներ: Տարբերում են 2 տիպի Մ. օ. պրոկարիոտներ և էուկարիոտներ: Պրոկարիոտները (բակտերիաներ, կապտականաչ ջրիմուռների մի մասը) չունեն տարբերակված կորիզ, *միտոզը* արտահայտված չէ: Ժառանգական ինֆորմացիայի ապարատը նուկլեոիդն է: Էուկարիոտներին (միաբջիջ կանաչ և մի քանի ուրիշ ջրիմուռներ, նախակենդանիներ) բնորոշ է միտոզով բաժանվող կորիզը: Ընդհանուր կառուցվածքով և օրգանելների հավաքով նման են բազմաբջիջ օրգանիզմների բջիջներին: Որոշ Մ. օ. կարող են գաղութներ առաջացնել:

**ՄԻԱԳՈՒՆՈՒԹՅՈՒՆ**, մոնոքրոմիա (< *մոնո*... և հուն. *χρῶμα* — գույն, ներկ), կերպարվեստում և ճարտարապետության մեջ, միագույն գեղարվեստական ստեղծագործություն: Գեղանկարչության, գրաֆիկայի, ինչպես նաև դեկորատիվ-կիրառական արվեստի մեջ միագույն են համարվում այն աշխատանքները, որոնք ստեղծվում են որևէ մեկ գույնով կամ նրա երանգներով: Գոյություն ունի դեկորատիվ գեղանկարչության տեսակ, որը հիմնվում է Մ-յան վրա (տես նաև *Գրիզայլ*): Ճարտ. և քանդակագործության մեջ Մ. ստացվում է միագույն նյութերի կիրառմամբ կամ երանգավորմամբ:

**ՄԻԱԵՂՋՅՈՒՐ** (լատ. Monoceros), համաստեղություն երկնքի հասարակածային գոտում: Գտնվում է Երկվորյակներ, Փոքր շուն, Հիդրա, Նավախել, Մեծ շուն, Նապաստակ, Օրիոն համաստեղությունների միջև: Ամենապայծառ աստղը 3,8-րդ *աստղային մեծության* է: ՀՍՍՀ տարածքից լավ է երևում հատկապես ձմռանը:

**ՄԻԱԿԱՄՈՒԹՅՈՒՆ**, Բյուզանդիայում VII դարում ձևավորված քրիստոնեական դավանաբանական ուսմունք: Հեղինակներն են Թեոդորոս Փառանի եպիսկոպոսը և Կ. Պոլսի պատրիարք Սարգիսը: Ընդունելով *երկաբնակների* վարդապետությունը՝ Մ-յան հետևորդները գտնում էին, որ Հիսուս Քրիստոսն ունի մեկ կամք և մեկ ներգործություն: Սրանով միակամները ցանկանում էին հաշտեցնել *միաբնակներին* և երկաբնակներին ու վերամիավորել պառակտված եկեղեցին: 680-ի Կ. Պոլսի տիեզերական ժողովում քաղկեդոնական եկեղեցիները Մ. դիտեցին որպես միաբնակության մի նոր արտահայտություն և դատապարտեցին այն. ընդունվեց Հիսուս Քրիստոսին երկու կամք, երկու բնություն և երկու ներգործություն վերագրող սկզբունքը: Մ-յան մերժումով ավելի խորացավ միաբնակ և երկաբնակ եկեղեցիների մեկուսացումը:

**ՄԻԱԿՈՂՄԱՆԻ ՄԱԿԵՐԵՎՈՒՅԹՆԵՐ**, մակերևույթներ, որոնք, ի տարբերություն քառակուսու, գլանի, սֆերայի, չունեն երկու տարբեր երես (կողմ): Մ. մ. բնութագրվում են հետևյալ հատկությամբ. եթե վերջինիս որևէ կետում վերցնենք այդ մակերևույթի նորմալ վեկտորը և այն անընդհատ տեղափոխենք մակերևույթի վրա ընկած փակ կորով, ապա, վերադառնալով սկզբնական կետը, նորմալը կընդունի հակադիր ուղղությունը: Միակողմանի մակերևույթի օրինակ է *Մյոբիուսի թերթը*:

**ՄԻԱԿՈՄՊԼԵԿՏ ԴՊՐՈՑ**, տարրական դպրոց մեկ ուսուցչով, որը միաժամանակ վարում է բոլոր դասարանները: Սովորողների թիվը չի անցնում 50-ից: ՍՍՀՄ-ում Մ. դ-ները դադարել են ինքնուրույն նշանակություն ունենալուց և պահպանվել են միայն բազմակոմպլեկտ դպրոցներից հեռու ընկած փոքր ավաններում:

**ՄԻԱՁԱՅՆՈՒԹՅՈՒՆ**, երաժշտական ստեղծագործության կերտվածք (նաև՝ շարադրության եղանակ), որն ընդգրկում է միայն մեկ ձայն, մեկ մեղեդի (ի տարբերություն *բազմաձայնության*): Հատուկ է շատ ժողովուրդների ժող. երաժշտությանը (մեներգեր, խմբական ունիսոն երգեր, գործիքային միայնակ ու ունիսոն խմբական նվագներ են): Երբեմն, հակադրություն ստեղծելու նպատակով, հատվածաբար օգտագործվում է նաև բազմաձայն ստեղծագործության մեջ: Մ. իր սահմանափակ միջոցներով հանդերձ պահպա-

նում է արտահայտչական զգալի կարողություն:

**ՄԻԱՄՈԼԵԿՈՒԼԱՅԻՆ ՌԵԱԿՑԻԱՆԵՐ**, տես *Քիմիական ռեակցիայի կարգ*:

**ՄԻԱՆԴԱՄ**, հանրահաշվական արտահայտությունների պարզագույն տեսակ, որ դիտարկվում է տարրական հանրահաշվում: Մ. անվանում են թվային բազմապատկիչից (գործակցից) և դրական ամբողջ ցուցիչով մեկ կամ մի քանի տառերից կազմված արտադրյալը, ինչպես նաև առանձին թիվը և տառը, օրինակ՝

$+5a^2b^2xy^2$, $-6ax^4$, 7, $-c$:

**ՄԻԱՆՁՆՅԱ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆ**, կառավարման սկզբունք, երբ սոցիալիստական տնտեսության տարբեր օղակների ղեկավարներին տրվում են ֆունկցիաների իրականացման լայն լիազորություններ, իսկ աշխատանքի արդյունքների համար սահմանվում է անձնական պատասխանատվություն: ՍՍՀՄ պետ. մարմիններում, հիմնարկ-ձեռնարկություններում աշխատանքային կարևորագույն հարցերի քննարկման ժամանակ Մ. ղ. զուգակցվում է կոլեգիալ ղեկավարության սկզբունքի հետ: Տես նաև *Դեմոկրատական ցենտրալիզմ* հոդվածում:

**ՄԻԱՆՍԱՐՅԱՆՑ** Միքայել Մեսրոպի [1830, Տփղիս (այժմ՝ Թբիլիսի)—5.2.1880, Պետերբուրգ (այժմ՝ Լենինգրադ)], հայ գիտական *մատենագիտության* հիմնադիր-լրագրող, հասարակական գործիչ: Սովորել է Ներսիսյան դպրոցում, Լազարյան



Մ. Մ. Միանսարյանց

ճեմարանում, ավարտել Պետերբուրգի կայսերական հեծելազորային բարձրագույն ուսումնարանը (1857): Եղել է փոխգնդապետ: Աշխատակցել է «Հյուսիսափայլ», «Մեղու Հայաստանի», «Кавказ» և այլ պարբերականների: Կազմել է «Քնար հայկական» (1868) երգարանը, որի վերջաբանում, ինչպես նաև «Կանոնավոր և վայելուչ գրության պատմությունը և տեսությունը» (1872) աշխատության մեջ, ամփոփել է իր մանկավարժական հայացքները: 1873-ին Լայպցիգում հայկ. դպրոցների համար որպես ձեռնարկ հրատարակել է իր կազմած «Հայերեն կանոնավոր և վայելուչ գրության» վարժությունների 5 և տողանցների 4 պրակ: Կազմել է հայ տպագիր արտադրանքի ընդհանուր մատենագիտություն (անտիպ): 1874—76-ին լույս է ընծայել «Կովկասի և Անդրկովկասի մատենագիտություն» աշխատության առաջին հատորը, որտեղ հայերեն, ռուս., ֆրանս., գերմ., վրացերեն և այլ լեզուներով ներկայացված են մոտ 6000 գիրք, հոդված, քարտեզ, տպագիր ու ձեռագիր նյութեր: Գերակշիռ մասը կազմում է հայերեն, ինչպես և տարբեր լեզուներով հայագիտական գրականությունը:

Գրկ. Իշխանյան Ռ. Հայ մատենագիտության պատմություն, պր. 2, Ե., 1968:

*Ռ. Իշխանյան*

**ՄԻԱՆՍԱՐՈՎ** Էդուարդ Արսենի (ծն. 24.10. 1933, Երևան), սովետական դաշնակահար: Սովորել է Երևանի Չայկովսկու անվ. և Բելոռուսիայի կոնսերվատորիային կից երաժշտական դպրոցներում: 1958-ին ավարտել է Մոսկվայի կոնսերվատորիան, 1963-ին՝ կից ասպիրանտուրան (Լ. Ն Օբորինի դասարան): Երաժիշտ-կատարողների միջազգային մրցույթի դափնեկիր է (1958, Մոսկվա): 1959-ից համերգներ է տալիս ՍՍՀՄ քաղաքներում և արտասահմանում: Համերգացանկում են՝ Շումանի, Շուբերտի, Լիստի, Շոպենի, Բրամսի, Սկրյաբինի, Պրոկոֆևի, Շոստակովիչի, Խաչատրյանի, Սվիրիդովի, Բաբաջանյանի, Շչեդրինի երկերը: *Շ. Ափոյան*

**ՄԻԱՆՍԱՐՈՎ** Սերգեյ Արկադիի (3.5.1916, Թիֆլիս —7.2.1966, Թբիլիսի), գեներալ-մայոր (1953): ՍՄԿԿ անդամ 1942-ից: Սովետական բանակում ծառայել է 1936-ից: 1940-ին ավարտել է Բաքվի հետևակային ուսումնարանը: Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին. 1941—43-ին եղել է հրաձգային դիվիզիայի շտաբի բաժնի պետի օգնական, ապա՝ պետ: 1943-ի դեկտեմբերին գլխավոր շտաբին կից բարձրագույն հատուկ դպրոցն ավարտելուց հետո նշանակվել է կորպուսի շտաբի հետախուզության պետի տեղակալ, հետագայում՝ պետ և 1-ին Ուկրաինական ռազմաճակատում՝ բանակի շտաբի հետախուզության պետ: Մասնակցել է ռազմաճակատի հարձակողական բոլոր գործողություններին: Ետպատերազմյան տարիներին Մ. ծառայել է դիվիզիայում որպես շտաբի պետ, դիվիզիայի հրամանատար, միավորման հրամանատարի տեղակալ և բանակի շտաբի պետ: 1958-ին ավարտել է Գլխավոր շտաբի ռազմ. ակադեմիան: Եղել է ՀՍՍՀ IV գումարման Գերագույն սովետի դեպուտատ: Պարգևատրվել է Կարմիր դրոշի, Ալեքսանդր Նևսկու, Հայրենական պատերազմի 2-րդ աստիճանի, Կարմիր աստղի 2 շքանշաններով ու մեդալներով:

*Ա. Ղազարյան*

**ՄԻԱՆՑՔԱՆԻՆԵՐ** (Monotremata), կլոակավորներ, ձվածիններ, կաթնասունների կարգ. ընդգրկում է 2 ընտանիք՝ եխիդնաներ և *բադակտուցներ*, 5 տեսակ: Կաթնասունների մեջ միակ ձվածին խումբն է: Չվերը հարուստ են սննդանյութերով և պատված ամուր (եղջերացած) թաղանթով: Կառուցվածքի բազմաթիվ գծերով նման են սողուններին. ազդրոսկրերը թիակների հետ ձուլված չեն, աղիքները և միզասեռական ծոցը բացվում են կլոակայի մեջ: Մարմնի ջերմաստիճանը համեմատաբար ցածր է (26—35°C), խիստ տատանվող: Կաթնագեղձերը պարզ են, խողովակային կառուցվածքով: Հասուն անհատներն ատամներ չունեն: Տարածված են Ավստրալիայում, Տասմանիայում, Նոր Գվինեայում:

**ՄԻԱՇԱՔԱՐՆԵՐ**, տես *Ածխաջրեր*:

**ՄԻԱՇԱՔԻԼԱՎՈՐՆԵՐ** (Monocotyledoneae կամ Monocotyledones), ծածկասերմ բույսերի դաս. բնորոշվում է միաշաքիլ սաղմով (այստեղից՝ Մ. անվանումը), գլխավոր արմատի փոխարեն հավելյալ արմատների գերակշռող զարգացմամբ, տերևների զուգահեռ կամ աղեղնային ջղավորությամբ: Ի տարբերություն *երկշաքիլավորների*, Մ-ի փոխադրող խրձերը սովորաբար անկանոն են դասավորված, փակ են, կամբիումից զուրկ, որի հետևանքով ցողունը և արմատը հիմնականում հաստությամբ չեն աճում: Մեծ մասի սերմնաբանը վերնադիր է, ծաղկի առանցքը՝ կոնաձև, մասամբ՝ ուռուցիկ կամ հարթ: Ցողունները թույլ են ճյուղավորված, տերևները սովորաբար պարզ են, ամբողջական: Ենթադրվում է, որ Մ. առաջացել են երկշաքիլավորներից՝ նախակավճի շրջանում կամ զարգացել են դրանց զուգահեռ: Հայտնի է Մ-ի 65 հզ., ՍՍՀՄ-ում՝ 2600 տեսակ (բարձրակարգ բույսերի մոտ 15%-ը): Աճում են ամենուրեք: Հս. և բարեխառն լայնություններում ներկայացված են գլխավորապես խոտաբույսերով. ծառատեսակներ, հատկապես ցողունի երկրորդային աճով, հանդիպում են մերձարևադարձային, ավելի հաճախ՝ արևադարձային շրջաններում: Մ. կազմում են մարգագետինների, տափաստանների, սավաննաների խոտածածկի նշանակալի մասը: Մ-ից են՝ հացազգիները, շաքարեղեգը, արմավենիները, սիզախոտը, շյուղախոտը, վարդակակաչը, շուշանը, ինչպես նաև որոշ թելատու բույսեր, դեղաբույսեր:

**ՄԻԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ**, միիշխանություն, ինքնակալություն, կառավարման ձև շահագործողական հասարակարգերում, որի դեպքում պետության գերագույն իշխանությունը լրիվ կամ մասնակիորեն տնօրինում է նրա միանձնյա գլուխը՝ միապետը (թագավոր, կայսր, ցար, շահ, սուլթան ևն): Տարբերում են անսահմանափակ (տես *Բացարձակ միապետություն*, *Բռնապետություն*, *Կրոնապետություն*) և սահմանափակ (սահմանադրական Մ., *Միապետություն դասային*) Մ-ներ: Արդի դարաշրջանում սահմանադրական Մ-ներ են Մեծ Բրիտանիան, Նորվեգիան, Դանիան, Շվեդիան ևն (տես այդ պետությունների մասին հոդվածների Պետական կարգը բաժինը): Ասիայի որոշ երկրներում դեռևս պահպանվում են կրոնապետական Մ-ներ: Մ-ներ են եղել հայկ. բոլոր թագավորությունները: Տես նաև *Պետություն*:

**ՄԻԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ ԴԱՍԱՅԻՆ**, դասային ներկայացուցչական միապետություն, դասային ներկայացուցչությամբ ֆեոդալական միապետություն, ֆեոդալական պետության ձև, որի դեպքում թագավորի (կամ խոշոր ֆեոդալների) իշխանությունն իրականացվում է դասային-ներկայացուցչական հիմնարկների հետ համատեղ: Ձևավորվել է XIII—XIV դդ., Եվրոպայում, համապետական դասերի և դասային ներկայացուցչական մարմինների (Անգլիայում՝ *պառլամենտ*, Ֆրանսիայում՝ *գլխավոր շտատներ*, Իսպանիայում՝ *կորտեսներ* ևն) ստեղծման ընթացքում: Ռուսաստանում դասային ներկայացուցչական մարմինները զեմստվային (տես *Զեմստվո*) ժողովներն էին (XVI—XVII դդ.):

**ՄԻԱՊՏՂԱԲԵՐ ԲՈՒՅՍԵՐ**, մոնոկարպ բույսեր, բույսեր, որոնք կյանքում

մեկ անգամ են ծաղկում և պտղաբերում, որից հետո սովորաբար մահանում են: Մ. բ. են բոլոր միամյա և երկամյա բույսերը, իսկ բազմամյաներից՝ բամբուկի, ագավայի, արմավենու որոշ տեսակներ ևն:

**ՄԻԱՊՐԱՆՔԱՅԻՆ ՄԱՍՆԱԳԻՏԱՑՈՒՄ**, երկրի տնտեսության միակողմանի զարգացում, երբ արտահանման նպատակով հիմնականում արտադրվում է ապրանքների մեկ-երկու տեսակ (հիմնականում գյուղատնտեսական և հանքային հումք): Բնորոշ է նախկին գաղութային և կախյալ երկրների մեծ մասին: Մ. մ-ման հաղթահարումը, *տնտեսության դիվերսիֆիկացումը* այդ երկրների տնտ. ինքնուրույնության ապահովման պայմանն է:

**ՄԻԱՌԵԼՍ ՃԱՆԱՊԱՐՀ**, տրանսպորտային համակարգ, որտեղ էստակադի կամ առանձին հենարանների վրա ամրացված հեծանով (միառելսով) շարժվում են բեռնատար սայլակները կամ մարդատար վագոնները: Մ. ճ-ները լինում են կախովի (վագոնները հենվում են ուղեհեծանի վրա տեղադրված շարժասայլակին) և ընդկախ (վագոնները կախված են շարժասայլակից և տեղաշարժվում են մոնոռելսի տակով): Ռուսաստանում առաջին բեռնատար Մ. ճ. (ձիաքարշ ուժով) կառուցել է մեխանիկ Ի. Կ. Էլմանովը XIX դ. սկզբին, Մոսկվայի մերձակայքում, իսկ XIX դ. վերջին Գատչինայում կառուցվել է էլեկտրիֆիկացված Մ. ճ-ի տեղամաս, որոնք, սակայն, Ռուսաստանում լայն կիրառություն չստացան: Արտասահմանում հնագույններից է Գերմանիայի Վուպերտալ քաղաքի Մ. ճ. (կառուցվել է 1902-ին): 1957—70-ին ԱՄՆ-ում, Ճապոնիայում, Կանադայում, Իտալիայում կառուցվել են շուրջ 30 Մ. ճ-ներ: ՍՍՀՄ-ում մշակվում են Մ. ճ-ների նախագծեր («Ալվեգ» և «Սաֆեժե» համակարգերի)՝ խոշոր արդ. կենտրոններում ուղևորների փոխադրման համար:



Միառելս ճանապարհ Տոկիոյում

Առավել տարածված են ԳՖՀ-ում մշակված «Ալվեգ» համակարգի կախովի Մ. ճ-ները, օրինակ, Տոկիոյում գործող 15 *կմ* երկարությամբ Մ. ճ.: Ընդկախ Մ. ճ-ների տարատեսակներն են. ԱՄՆ-ում ստեղծված «Աքսայվեյ» համակարգի (ուղիների բաց կոնստրուկցիայով և վագոնների անհամաչափ կախվածքով) և Ֆրանսիայում մշակված «Սաֆեժե» համակարգի (կրող սնամեջ հեծանի ներսում տեղադրված փակ ուղիներով և վագոնների համաչափ կախվածքով) Մ. ճ.: Մարդատար Մ. ճ-ի վագոնների շարժասայլակներն օժտված են անաղմուկ ընթացքն ապահովող էլեկտրական շարժիչով, պնևմատիկ շարժական կամ ուղղիչ անիվներով: Վագոնների տարողությունը՝ 60—120 մարդ: Բեռնատար Մ. ճ. կիրառում են արդ. ձեռնարկություններում՝ որպես արտադրամասային և միջարտադրամասային տրանսպորտի միջոց: Մեծ արագություններ զարգացնելու հնարավորության, երթևեկության անվտանգության, էներգետիկական շահավետության և փոքր մետաղատարության, ինչպես նաև լրիվ ավտոմատացման հնարավորության շնորհիվ Մ. ճ. արդ., քաղաքային և քաղաքամերձ տրանսպորտի լավագույն միջոց է: *Ա. Սահրադյան*

**ՄԻԱՍ**, քաղաք ՌՍՖՍՀ Չելյաբինսկի մարզում, Միաս գետի ափին: Ունի երկաթուղային կայարան: 152 հզ. բն. (1980), կան բեռնատար ավտոմոբիլների, «Միասէլեկտրաապարատ», փայտամշակման և այլ գործարաններ: Գործում են Չելյաբինսկի պոլիտեխնիկական ինստ-ի երեկոյան ֆակուլտետը, ավտոմեխանիկական, երկրաբանական հետախուզական տեխնիկումներ, մանկավարժական և երաժշտական ուսումնարաններ, հայրենագիտական թանգարան: Մ-ի մոտ է Իլմենյան արգելավայրը, շրջակայքում կա ոսկու, տալկի, մարմարի արդյունահանություն: Հիմնադրվել է 1773-ին:

**ՄԻԱՍՄԲԱԿԱՎՈՐՆԵՐ** (Perissodactyla), կաթնասունների կարգ: Խոշոր, հազվադեպ միջին մեծության կենդանիներ են: Առջևի վերջավորություններն ունեն 1, 3 կամ 4, ետին վերջավորությունները՝ 1 կամ 3 մատ: Առավել զարգացած է երրորդ մատը, որը կրում է մարմնի հիմնական ծանրությունը: Մատների ծայրային ֆալանգները պատված են սմբակներով: Ի տարբերություն *երկսմբակավորների*, Մ-ի ազդրոսկրերն ունեն երրորդ թմբիկ: Բուսակեր են, ստամոքսը պարզ է, միախցիկ: Ժամանակակից Մ. ընդգրկում են 3 ընտանիք՝ *ձիազգիներ*, *ռնգեղջյուրներ*, *գետակինճներ*:

**ՄԻԱՍՆԱԿԱՆ ԳԻՆ**, տես *Գին*:

**ՄԻԱՍՆԱԿԱՆ ԷՆԵՐԳԱՀԱՄԱԿԱՐԳ**, երկրի ամբողջ տարածքի կամ դրա զգալի մասի էներգամատակարարման համար էներգահամակարգերի միավորում: Մ. է-ում էներգահամակարգերը միացվում են գերբարձր լարման (500, 700 *կվ* և ավելի) էլեկտրահաղորդման գծերով: Մ. է. ունի մի շարք առավելություններ առանձին և *միացյալ էներգահամակարգերի* նկատմամբ. աշխատանքի բարձր հուսալիություն, անխափան էներգամատակարարում, հզորության անհրաժեշտ ռեզերվ ստեղծելու դյուրինություն ևն: Մ. է. օժտված է մեծ համակարգերին բնորոշ հատկություններով (մեծ չափեր, բարդ միջհամակարգային կապեր, կարգավորման նպատակաուղղվածություն): Մ. է-ի ստեղծումը նպաստում է միջանկյալ շրջանների էլեկտրիֆիկացման ծախսերի նվազմանը, էլեկտրակայանների հզորության և էներգիայի լավագույն օգտագործմանը, կայանների ու էներգահամակարգերի շահավետության և հուսալիության բարձրացմանը: Բացի այդ, տարբեր ժամային գոտիներում գտնվող էներգահամակարգերի միավորումը նվազեցնում է առավելագույն գումարային բեռնվածքը:

ՍՍՀՄ-ում 60-ական թթ. գործում է երկրի եվրոպական մասի Մ. է.: Սիբիրի, Միջին Ասիայի և այլ միացյալ էներգահամակարգերի հիման վրա ստեղծվում է ՍՍՀՄ-ի Մ. է.:

**ՄԻԱՍՆԱԿԱՆ ՏՐԱՆՍՊՈՐՏԱՅԻՆ ՑԱՆՑ (ՍՍՀՄ)**, շրջանառության ոլորտը սպասարկող բոլոր տեսակի փոխադրամիջոցների համախումբ, որն ապահովում է արտադրանքի փոխադրումը արտադրության կետերից սպառման վայրեր, ինչպես նաև իրագործում ուղևորների փոխադրումը: ՍՍՀՄ Մ. տ. ց-ի կազմի մեջ են մտնում երկաթուղային, գետային, ծովային, ավտոմոբիլային, օդային, խողովակաշարային տրանսպորտը և էլեկտրահաղորդման բարձրավոլտ գծերը: Մ. տ. ց. ներառում է նաև շարժակազմը և փոխադրումների համար անհրաժեշտ բոլոր հարմարանքները: Այդ առումով ավելի ճիշտ է խոսել ոչ թե Մ. տ. ց-ի, այլ *միասնական տրանսպորտային համակարգի* մասին: Մ. տ. ց-ում յուրաքանչյուր փոխադրամիջոցի համար ընտրվում է այն ոլորտը, որտեղ առավել արդյունավետ է տվյալ փոխադրամիջոցի կիրառումը: Հենց այս ուղղությամբ է տարվում սոցիալիստական պետության տրանսպորտային քաղաքականությունը: Էներգակիրների արդյունավետ փոխադրման հարցը լուծվում է կոմպլեքսային ձևով: Դրանով է, մասնավորապես, պայմանավորված Մ. տ. ց-ի կազմում խողովակաշարային տրանսպորտից բացի էլեկտրահաղորդման բարձրավոլտ գծերի ընդգրկելը: ՍՍՀՄ-ում գործում է հզոր օդային տրանսպորտ, զարգացած ավտոմոբիլային և գազամուղային տրանսպորտ, իսկ քաղաքներում՝ տրոլեյբուսային տրանսպորտ և մետրոպոլիտեն: Նոր փոխադրամիջոցների արագ զարգացման շնորհիվ փոխվում է առանձին փոխադրամիջոցների տեսակարար կշիռը ՍՍՀՄ ընդհանուր բեռնաշրջանառության և ուղևորաշրջանառության մեջ: Մ. տ. ց-ի կարևորագույն խնդիրն է առանձին փոխադրամիջոցների աշխատանքի և խառը փոխադրումների կազմակերպման բարելավումը, առանձին փոխադրամիջոցների միջև փոխադրումների ավելի ռացիոնալ բաշխումը:

**ՄԻԱՍՏՎԱԾՈՒԹՅՈՒՆ**, կրոնի ձև, որին, ի տարբերություն *բազմաստվածության*, հատկանշական է միակ, միասնական աստծու պաշտամունքը: Միաստվածային կրոններ են *հուդայականությունը*, *քրիստոնեությունը*, *մահմեդականությունը*: Սակայն ոչ մի կրոնի բնորոշ չէ հետևողական Մ. (քրիստոնեության մեջ միասնական աստվածը հանդես է գալիս երեք դեմքով՝ հայր աստված, որդի աստված, սուրբ հոգի աստված, պաշտվում են աստվածամայրը, առաքյալները, մարգարեները ևն: Նման յուրահատկություններ ունեն նաև հուդայականությունն ու մահմեդականությունը): Մ. առաջացել է տոհմացեղային կարգերի քայքայման և հնագույն պետությունների ձևավորման դարաշրջանում, երբ առանձին ցեղերի աստվածները միավորվում էին մեկ դիցարանում, իսկ առավել հզոր ցեղերի որևէ աստված որոշ

դեպքերում դառնում էր գլխավոր և ապա՝ միակ աստվածը: Արդի գիտությունը ժխտում է աստվածաբանների այն պնդումը, որ իբր Մ. նախասկզբնական կրոնն է (այդ գաղափարն է հիմնավորում նախամիաստվածության տեսությունը), իսկ հավատալիքների մյուս ձևերը (անիմիզմ, ֆետիշիզմ, բազմաստվածություն ևն) լոկ շեղումն են այդ «իսկական» կրոնից:

*Գրկ.* Токарев С. А., Религия в истории народов мира, М., 1964.

**ՄԻԱՎՈՐՆԵՐԻ ՀԱՄԱԿԱՐԳԵՐ** ֆիզիկայում, հիմնական և ածանցյալ միավորների խմբեր, որոնք կազմվում են ընդունված սկզբունքների համաձայն և վերաբերում են մեծությունների որոշակի համակարգի: Մ. հ. կառուցվում են ֆիզիկական մեծությունների կապն արտահայտող տեսությունների հիման վրա: Համակարգի միավորները սահմանելիս ֆիզիկական առնչությունների հաջորդականությունն ընտրվում է այնպես, որ յուրաքանչյուր հաջորդ արտահայտություն պարունակի միայն մեկ նոր ֆիզիկական մեծություն: Դա թույլ է տալիս ֆիզիկական մեծության միավորը սահմանել նախօրոք ընտրված միավորներով, այսինքն, վերջին հաշվով՝ համակարգի հիմնական (անկախ) միավորներով: Առաջին Մ. հ-ում հիմնական են համարվել երկարության և զանգվածի միավորները, օրինակ, Մեծ Բրիտանիայում՝ *ֆուտը* և անգլ. *ֆունտը*, Ռուսաստանում՝ *արշինը* և ռուս. ֆունտը: Այդ համակարգերի մեջ մտնում էին նույն մեծության՝ ինքնուրույն անվանում ունեցող բազմապատիկ միավորներ (յարդը և դյույմը՝ անգլիականում, սաժենը, վերշոկը և ֆուտը՝ ռուսականում), որոնք բարդացնում էին ածանցյալ միավորների կազմումը: Միավորների ազգային համակարգերի տարբերությունների հետ կապված դժվարությունները հանգեցրին *Չափերի մետրական համակարգի* մշակմանը (XVIII դ., Ֆրանսիա): Հետագայում, մինչև *Միավորների միջազգային համակարգին* անցնելը (1960), գործածվել են հետևյալ համակարգերը.

Միավորների MkGS (ՄկԳՎ) համակարգ, մեխանիկական մեծությունների հնացած և գործածությունից դուրս եկած համակարգ, որը նախկինում կիրառվել է տեխնիկայում՝ «տեխնիկական» ոչ պաշտոնական անունով: Համակարգի հիմնական միավորներն են՝ մետրը (երկարության միավոր), կիլոգրամ-ուժը (ուժի միավոր) և վայրկյանը (ժամանակի միավոր): ՄկԳՎ համակարգը կոհերենտ (համաձայնեցված) չէ էլեկտրական և մագնիսական մեծությունների միավորների հետ:

Միավորների MKSK (ՄԿՎԿ) համակարգ, ջերմային մեծությունների միավորների համակարգ, որը Միավորների միջազգային համակարգի մասն է կազմում: Հիմնական միավորներն են՝ մետրը (երկարության միավոր), կիլոգրամը (զանգվածի միավոր), վայրկյանը (ժամանակի միավոր) և կելվինը (թերմոդինամիկական ջերմաստիճանի միավոր):

Միավորների MSK (ՄՎՄ) համակարգ, լուսային մեծությունների միավորների համակարգ, որը Միավորների միջազգային համակարգի մասն է կազմում: Հիմնական միավորներն են մետրը (երկարության միավոր), վայրկյանը (ժամանակի միավոր) և մոմը (լույսի ուժի միավոր):

Միավորների MKS (ՄԿՎ) համակարգեր, մեխանիկական և ձայնագիտական մեծությունների միավորների համակարգեր, որոնք, իբրև բաղկացուցիչ մասեր. մտնում են Միավորների միջազգային համակարգի մեջ: Հիմնական միավորներն են՝ մետրը (երկ. միավոր), կիլոգրամը (զանգվածի միավոր) և վայրկյանը (ժամանակի միավոր):

Միավորների MKSA (ՄԿՎԱ) համակարգ, էլեկտրական և մագնիսական մեծությունների միավորների համակարգ, որը Միավորների միջազգային համակարգի մասն է կազմում: Հիմնական միավորներն են՝ մետրը (երկարության միավոր), կիլոգրամը (զանգվածի միավոր), վայրկյանը (ժամանակի միավոր) և ամպերը (էլեկտրական հոսանքի ուժի միավոր):

Միավորների CGS (ՍԳՎ) համակարգեր, մեխանիկական, էլեկտրական, մագնիսական և ձայնագիտական մեծությունների միավորների համակարգեր: Հիմնական միավորներն են՝ սանտիմետրը (երկարության միավոր), գրամը (զանգվածի միավոր) և վայրկյանը (ժամանակի միավոր): ՍԳՎ համակարգերում ինքնուրույն անվանումով գործածվում են հետևյալ միավորները. *դինը* (ուժի միավոր), *էրգը* (աշխատանքի և էներգիայի միավոր), *պուազը* (կինեմատիկական մածուցիկության միավոր), *պուազը* (դինամիկական մածուցիկության միավոր), միկրոբարը (ճնշման միավոր), *մաքսվելը* (մագնիսական հոսքի միավոր), *գաուսը* (մագնիսական ինդուկցիայի միավոր), գիլբերտը (մագնիսաշարժ ուժի միավոր), *էրստեդը* (մագնիսական դաշտի լարվածության միավոր): Էլեկտրական և մագնիսական մեծությունների համար կիրառում են ՍԳՎ համակարգերի 7 տեսակ. էլեկտրաստատիկական՝ CGSE (ՍԳՎԷ, վակուումի դիէլեկտրիկ թափանցելիությունը այս համակարգում չափազուրկ մեծություն է և հավասար է 1-ի), էլեկտրամագնիսական՝ CGSM (ՍԳՎՄ, վակուումի մագնիսական թափանցելիությունը չափազուրկ մեծություն է և հավասար է 1-ի), սիմետրիկ կամ *գաուսյան համակարգ*՝ CGS (ՍԳՎ, էլեկտրական միավորները համընկնում են ՍԳՎԷ-ի էլեկտրական միավորներին, իսկ մագնիսական միավորները՝ ՍԳՎՄ-ի մագնիսական միավորներին), CGS$\varepsilon_0$ (ՍԳՎ$\varepsilon_0$, չորրորդ հիմնական միավորը $\varepsilon_0$-ն է՝ վակուումի դիէլեկտրիկ թափանցելիությունը), CGS$\mu_0$ (ՍԳՎ$\mu_0$, չորրորդ հիմնական միավորը $\mu_0$-ն է՝ վակուումի մագնիսական թափանցելիությունը), CGSF (ՍԳՎՖ, չորրորդ հիմնական միավորը ֆրանկլինն է՝ էլեկտրական լիցքի միավորը), CGSB (ՍԳՎԲ, չորրորդ հիմնական միավորը բիոն է՝ էլեկտրական հոսանքի ուժի միավորը): Էլեկտրական և մագնիսական մեծությունների միավորների մասին տես նաև *Էլեկտրական և մագնիսական միավորների համակարգեր* հոդվածը:

Միավորների գործնական համակարգերից բացի, ֆիզիկայում կիրառվում են նաև այնպիսի համակարգեր, որոնց հիմքը կազմում են ունիվերսալ ֆիզիկական հաստատունները, օրինակ, լույսի տարածման արագությունը վակուումում, էլեկտրոնի լիցքը, Պլանկի հաստատունը:

*Գրկ.* Бурдун Г. Д., Единицы физических величин, 4 изд., М., 1967; Бурдун Г. Д., Марков Б. Н., Основы метрологии, М., 1972; Сена Л. А., Единицы физических величин и их размерности, 2 изд., перераб. и доп., М., 1977. *Ա. Դարբինյան*

**ՄԻԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԱԿԱՐԳ,** ֆիզիկական մեծությունների միավորների համակարգ: Ընդունել և գործնական կիրառության է հանձնարարել չափերին և կշիռներին նվիրված XI գլխավոր կոնֆերանսը (հոկտեմբեր, 1960, Փարիզ, տես *Չափագիտական ծառայություն*): ՍՍՀՄ-ում գործածության մեջ է դրվել 1963-ի հունվ. 1-ից: Կրճատ նշանակվում է ՄՀ (միջազգային նշանակումը՝ SI, ըստ «Système International» անվանման սկզբնատառերի): Մ. մ. հ. մշակվել է միավորների տարբեր համակարգերի բարդ համախմբությունը և *Չափերի մետրական համակարգի* հիման վրա կազմված առանձին արտահամակարգային միավորները փոխարինելու, ինչպես նաև միավորներից օգտվելը հեշտացնելու նպատակով: Մ. մ. հ-ի առավելություններն են՝ ունիվերսալությունը (ընդգրկում է գիտության և տեխնիկայի բոլոր բնագավառները) և կոհերենտությունը, այսինքն՝ համեմատականության գործակից չպարունակող հավասարումների հիման վրա կազմվող ածանցյալ միավորների համաձայնեցվածությունը: Վերջինիս շնորհիվ, հաշվարկներ կատարելիս, վերանում է բանաձևերի մեջ միավորների ընտրությունից կախված գործակիցներ մտցնելու անհրաժեշտությունը:

Աղյուսակում (տես հաջորդ էջը) բերված են Մ. մ. հ-ի հիմնական, լրացուցիչ և որոշ ածանցյալ միավորների անվանումներն ու նշանակումները (միջազգային և հայերեն): Առաջին երեք հիմնական միավորները (մետր, կիլոգրամ, վայրկյան) թույլ են տալիս համաձայնեցված ածանցյալ միավորներ կազմել մեխանիկական բնույթ ունեցող բոլոր մեծությունների համար, իսկ մյուսները (ամպեր, կելվին, կանդելա, մոլ) ավելացված են մեխանիկականի չբերվող մեծությունների ածանցյալ միավորներ կազմելու նպատակով: Ռադիան և ստերադիան լրացուցիչ միավորները ծառայում են հարթ կամ մարմնային անկյուններից կախված մեծությունների ածանցյալ միավորները կազմելու համար: Բազմապատիկ միավորների անվանումները կազմելիս օգտվում են համապատասխան նախածանցներից (դեցի, սանտի, հեկտո, մեգա ևն):

*Գրկ.* Бурдун Г. Д., Справочник по Международной системе единиц, М., 1971.

**ՄԻԱՎՈՐՎԱԾ ԱԶԳԵՐ,** տերմին, որով ընդունված է կոչել երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ (1939—45) հակահիտլերյան կոալիցիայի մեջ մտած պետություններին և որոնք 1945-ին ստեղծեցին *Միավորված ազգերի կազմակեր-*

Միավորների միջազգային համակարգի հիմնական և ածանցյալ միավորները

| Մեծություն | Միավորի անվանումը | Նշանակումը | |
|---|---|---|---|
| | | միջազգային | հայերեն |
| **Հիմնական միավորներ** | | | |
| Երկարություն | մետր | m | *մ* |
| Զանգված | կիլոգրամ | kg | *կգ* |
| Ժամանակ | վայրկյան | s | *վրկ* |
| Էլեկտրական հոսանքի ուժ | ամպեր | A | *ա* |
| Թերմոդինամիկական ջերմաստիճան | կելվին | K | K |
| Լույսի ուժ | կանդելա | cd | *կդ* |
| Նյութի քանակ | մոլ | mol | *մոլ* |
| **Լրացուցիչ միավորներ** | | | |
| Հարթ անկյուն | ռադիան | rad | *ռադ* |
| Մարմնային անկյուն | ստեռադիան | sr | *ստեռ* |
| **Ածանցյալ միավորներ** | | | |
| Մակերես | քառակուսի մետր | $m^2$ | *մ*$^2$ |
| Ծավալ, տարողություն | խորանարդ մետր | $m^3$ | *մ*$^3$ |
| Հաճախականություն | հերց | Hz | *hց* |
| Արագություն | մետրը վայրկյանի | m/s | *մ/վրկ* |
| Արագացում | մետրը քառակուսի վայրկյանի | $m/s^2$ | *մ/վրկ*$^2$ |
| Անկյունային արագություն | ռադիանը վայրկյանի | rad/s | *ռադ/վրկ* |
| Անկյունային արագացում | ռադիանը քառակուսի վայրկյանի | $rad/s^2$ | *ռադ/վրկ*$^2$ |
| Խտություն | կիլոգրամը խորանարդ մետրի | $kg/m^3$ | *կգ/մ*$^3$ |
| Ուժ | նյուտոն | N | *ն* |
| Ճնշում, մեխանիկական լարում | պասկալ | Pa | *պա(ն/մ*$^2$*)* |
| Կինեմատիկական մածուցիկություն | քառակուսի մետրը վայրկյանի | $m^2/s$ | *մ*$^2$*/վրկ* |
| Դինամիկական մածուցիկություն | պասկալ վայրկյան | Pa.s | *պա.վրկ* |
| Աշխատանք, էներգիա, ջերմության քանակ | ջոուլ | J | *ջ* |
| Հզորություն | վատտ | W | *վտ* |
| Էլեկտրականության քանակ | կուլոն | C | *կ* |
| Էլեկտրական լարում, էլեկտրաշարժ ուժ | վոլտ | V | *վ* |
| Էլեկտրական դաշտի լարվածություն | վոլտը մետրի | V/m | *վ/մ* |
| Էլեկտրական դիմադրություն | օհմ | Ω | *օհմ* |
| Էլեկտրահաղորդականություն | սիմենս | S | *սիմ* |
| Էլեկտրաունակություն | ֆարադ | F | *ֆ* |
| Մագնիսական հոսք | վեբեր | Wb | *վբ* |
| Ինդուկտիվություն | հենրի | H | *հն* |
| Մագնիսական ինդուկցիա | տեսլա | T | *տլ* |
| Մագնիսական դաշտի լարվածություն | ամպերը մետրի | A/m | *ա/մ* |
| Մագնիսաշարժ ուժ | ամպեր | A | *ա* |
| Էնտրոպիա | ջոուլը կելվինի | J/K | *ջ*/K |
| Տեսակարար ջերմունակություն | ջոուլը կիլոգրամ կելվինի | J/(kg.K) | *ջ/(կգ*.K) |
| Ջերմահաղորդականություն | վատտը մետր կելվինի | W/(m.K) | *վտ/(մ*.K*)* |
| Ճառագայթման ինտենսիվություն | վատտը ստեռադիանի | W/sr | *վտ/ստեռ* |
| Ալիքային թիվ | մեկը մետրի | $m^{-1}$ | *մ*$^{-1}$ |
| Լուսային հոսք | լյումեն | lm | *լմ* |
| Պայծառություն | կանդելան քառակուսի մետրի | $cd/m^2$ | *կդ/մ*$^2$ |
| Լուսավորվածություն | լյուքս | lx | *լք* |

*պությունը* (ՄԱԿ)։ Օգտագործվում է նաև որպես ՄԱԿ-ի կրճատ անվանում։

**ՄԻԱՎՈՐՎԱԾ ԱԶԳԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆ (ՄԱԿ)**, միջազգային կազմակերպություն, որը հիմնադրվել է ժողովուրդների միջև խաղաղությունն ու անվտանգությունն ամրապնդելու, պետությունների համագործակցությունը զարգացնելու նպատակով։ ՄԱԿ-ի հիմնադրումը նախաձեռնել են հակահիտլերյան կոալիցիայի գլխավոր երկրները՝ ՍՍՀՄ, ԱՄՆ, Մեծ Բրիտանիա։ Միջազգային նոր կազմակերպություն ստեղծելու հարցը արծարծվել է 26 պետությունների Վաշինգտոնյան դեկլարացիայում (1942-ի հունվար), արտաքին գործերի մինիստրների մոսկովյան դեկլարացիայում [ՍՍՀՄ-ի, ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի և Չինաստանի մասնակցությամբ (1943)], միջազգային մի շարք կոնֆերանսների (տես *Թեհրանի կոնֆերանս 1943*, *Դումբարտոն-Օկսի կոնֆերանս*, *Ղրիմի կոնֆերանս 1945*, *Սան Ֆրանցիսկոյի կոնֆերանսներ 1945*, *1951*) որոշումներում։ ՄԱԿ-ի կանոնադրությունը սկզբնապես ստորագրվել է 1945-ի հունիսի 26-ին՝ 50 հիմնադիր պետությունների կողմից և ուժի մեջ մտել հոկտ. 24-ին (որը և նշվում է որպես ՄԱԿ-ի օր)։ ՄԱԿ-ի կանոնադրությամբ ճանաչվում է նրա բոլոր անդամների իրավահավասարությունը, նախատեսվում է միջազգային վեճերը բացառապես խաղաղ ճանապարհով լուծելու պարտավորություն, միջազգային հարաբերություններում ուժի գործադրումից կամ գործադրման սպառնալիքից հրաժարում, ՄԱԿ-ի անդամ պետությունների ներքին գործերին չմիջամտելու պարտավորություն։ ՄԱԿ-ի անդամ կարող են ընտրվել խաղաղասեր բոլոր այն պետությունները, որոնք ի վիճակի են և ցանկություն են հայտնում կատարել նրա կանոնադրությամբ նախատեսված պարտավորությունները։ ՄԱԿ-ի անդամ ընդունվում են ՄԱԿ-ի *Գլխավոր ասամբլեայի* որոշմամբ՝ *Անվտանգության խորհրդի* երաշխավորությամբ։

1981-ի նոյեմբ. 1-ի դրությամբ ՄԱԿ-ի անդամ էր 157 պետություն։ Միջազգային խաղաղությունն ու անվտանգությունն ամրապնդելու նպատակով ՄԱԿ-ը պարտավոր է ձեռնարկել խաղաղությանն սպառնացող վտանգի վերացման, ագրեսիայի ակտերն ու խաղաղության դեմ ուղղված մյուս գործողությունները ճնշելու կոլեկտիվ և գործուն միջոցներ, իրավահավասարության և ինքնորոշման սկզբունքի հիման վրա ազգերի միջև զարգացնել բարեկամական հարաբերություններ, ինչպես նաև համընդհանուր խաղաղությունն ամրապնդելու նպատակով ձեռնարկել այլ համապատասխան միջոցներ՝ զարգացնել սոցիալ-մշակութային և հումանիտար խնդիրների իրականացման միջազգային համագործակցությունը, խրախուսել մարդու իրավունքների և հիմնական ազատությունների հարգումը՝ անկախ ռասայից, սեռից, լեզվից և կրոնից (ՄԱԿ-ի կանոնադրություն, հոդված 1-ին)։ ՄԱԿ-ի գործունեությունն իրականացնող գլխավոր մարմիններն են՝ Գլխավոր ասամբլեան, Անվտանգության խորհուրդը, Տնտեսական և սոցիալական խորհուրդը, Խնամակալության խորհուրդը (տես *Միջազգային խնամակալություն*), Միջազգային դատարանը, ՄԱԿ-ի քարտուղարությունը։ Նրա գործունեությունն ամբողջացնում են ՄԱԿ-ի մասնագիտացված հաստատություններն ու այլ հիմնարկները։

ՄԱԿ-ի գործունեությունը տարբեր փուլերում կախված է եղել իմպերիալիստական և հակաիմպերիալիստական ուժերի հարաբերակցությունից, ընթացել է նրանց միջև մղվող սուր պայքարի պայմաններում։ Այդ գործունեության դրական միտումների զարգացմանը խորապես նպաստել են ՍՍՀՄ և սոցիալիստական երկրների աճող հզորությունն ու հեղինակությունը, խաղաղության և դեմոկրատիայի համար պայքարող այլ ուժերի համագործակցությունը։ Խաղաղասեր պետությունների, այդ թվում առաջին հերթին, ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկր-

# ՄԻԱՎՈՐՎԱԾ ԱԶԳԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԸ

(1980-ի հուլիսի 1-ի դրությամբ)

**ՔԱՐՏՈՒՂԱՐՈՒԹՅՈՒՆ**

**ԳԼԽԱՎՈՐ ԱՍԱՄԲԼԵԱ**

- Գլխավոր կոմիտեներ
- Մշտական և ընթացակարգային կոմիտեներ
- Գլխավոր ասամբլեայի այլ օժանդակ մարմիններ

**ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ**

- Ռազմաշտաբային կոմիտե
- Զինաթափման հանձնաժողով
- ՄԱԿ-ի զինված ուժեր զինաթափումը հսկելու գծով — UNDOF
- Կիպրոսում խաղաղությունը պահպանելու ՄԱԿ-ի զինված ուժեր — UNFICYP
- ՄԱԿ-ի ժամանակավոր զինված ուժեր Լիբանանում — UNIFIL
- ՄԱԿ-ի զինվորական խումբ Հնդկաստանում և Պակիստանում — UNMOGIP
- ՄԱԿ-ի դիտորդների կազմակերպություն Պաղեստինում — UNTSO

**ԽՆԱՄԱԿԱԼԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ**

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴԱՏԱՐԱՆ**

- Ատոմային էներգիայի միջազգային գործակալություն — IAEA
- Տարիֆների և առևտրի գլխավոր համաձայնություն — GATT

**ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ**

- Ռեգիոնալ հանձնաժողովներ
- Ֆունկցիոնալ հանձնաժողովներ
- Նստաշրջանային մշտական և հատուկ կոմիտեներ

- Աշխատանքի միջազգային կազմակերպություն — ILO
- ՄԱԿ-ի պարենամթերքային և գյուղատնտեսական կազմակերպություն — FAO
- Կրթության, գիտության և մշակույթի կազմակերպություն — UNESCO
- Առողջապահության համաշխարհային կազմակերպություն — WHO
- Միջազգային վալյուտային ֆոնդ — IMF
- Զարգացման միջազգային ասոցիացիա — IDA
- Վերակառուցման և զարգացման միջազգային բանկ — IBRD
- Միջազգային ֆինանսական կորպորացիա — IFC
- Քաղաքացիական ավիացիայի միջազգային կազմակերպություն — ICAO
- Փոստի համաշխարհային միություն — UPU
- Հեռուստակապի համաշխարհային միություն — ITU
- Օդերևութաբանության համաշխարհային կազմակերպություն — WMO
- Միջկառավարական ծովային կոնսուլտատիվ կազմակերպություն — IMCO
- Ինտելեկտուալ սեփականության համաշխարհային կազմակերպություն — WIPO
- Գյուղատնտեսական զարգացման միջազգային ֆոնդ — IFAD

- Մերձավոր Արևելքում պաղեստինյան փախստականներին օգնելու Միավորված ազգերի գործակալություն — UNRWA
- ՄԱԿ-ի առևտրի և զարգացման կոնֆերանս — UNCTAD
- ՄԱԿ-ի մանկական ֆոնդ — UNICEF
- Փախստականների գծով ՄԱԿ-ի գլխավոր տեսուչի գերատեսչություն — UNHCR
- ՄԱԿ-ի պարենային ծրագիր — WEP
- ՄԱԿ-ի ուսումնական և հետազոտական ինստիտուտ — UNITAR
- ՄԱԿ-ի զարգացման ծրագիր — UNDP
- ● ՄԱԿ-ի արդյունաբերական զարգացման կազմակերպություն — UNIDO
- Շրջակա միջավայրի գծով ՄԱԿ-ի ծրագրի կառավարման խորհուրդ — UNEP
- ՄԱԿ-ի համալսարան — UNU
- ՄԱԿ-ի հատուկ ֆոնդ
- Պարենի համաշխարհային խորհուրդ
- Սետլմենտների գծով ՄԱԿ-ի կենտրոն — HABITAT
- Բնակչության գրաղվածության ՄԱԿ-ի ֆոնդ — UNFPA

Պայմանական նշաններ՝

- ☐ — ՄԱԿ-ի գլխավոր մարմիններ
- ✡ — ՄԱԿ-ի այլ մարմիններ
- ✕ — Մասնագիտացված հաստատություններ և այլ ինքնավար կազմակերպություններ համակարգի ներսում
- ● — Կազմակերպություններ, որոնք ենթակա են դառնալու մասնագիտացված հաստատություններ

ների նախաձեռնությամբ ՄԱԿ ընդունել է բազմաթիվ բանաձևեր (քիմ. և բակտերիալոգիական պատերազմի դատապարտման, սպառազինությունների ընդհանուր կարգավորման և կրճատման սկզբունքների, պատերազմի հանցագործներին հանձնելու և պատժելու, նոր պատերազմի պրոպագանդայի դեմ պայքարի, պետությունների միջև խաղաղ և բարիդրացիական հարաբերություններ հաստատելու և ամրապնդելու միջոցների, ընդհանուր և լրիվ զինաթափման, միջազգային հարաբերություններում ուժի գործադրումից հրաժարվելու և ատոմային զենքը առհավետ չկիրառելու, Անվտանգության խորհրդի անդամ պետությունների ռազմ. բյուջեները 10%-ով կրճատելու և տնտեսված միջոցների մի մասը զարգացող երկրներին օգնելու նպատակով օգտագործելու մասին ևն) և դեկլարացիաներ (պետությունների ներքին գործերին միջամտություն թույլ չտալու, նրանց անկախությունն ու սուվերենությունն պահպանվելու, միջազգային անվտանգության ամրապնդելու մասին ևն): ՄԱԿ-ի ընդունած որոշումների թվում աչքի ընկնող նշանակություն ունեն ազգային-ազատագրական շարժումներին, անկախ երկրների ազգային սուվերենության պաշտպանությանը նվիրված բանաձևերն ու որոշումները: ՄԱԿ-ը դատապարտել է ինտերվենցիաները, նրա միջամտությամբ գաղութային լծից ազատագրվել են բազմաթիվ երկրներ (Թունիս, Մարոկկո, Ալժիր, Կիպրոս, Արևմտյան Սամոա ևն): Քաղ. բնույթի հարցեր լուծելուց բացի, ՄԱԿ-ի մարմիններում քննարկվում են պետությունների տնտ., սոցիալական, մշակութային զարգացման հարցեր: ՄԱԿ-ի շրջանակներում զարգանում է պետությունների տնտ., գիտատեխնիկական և այլ բնագավառների համագործակցությունը: Կարևոր է նրա դերը միջուկային զենքի փորձարկումները արգելելու, միջուկային զենքը չտարածելու, տիեզերական տարածությունը խաղաղ նպատակով օգտագործելու վերաբերյալ պայմանագրերի կնքման գործում: ՄԱԿ-ի գործունեությանը խոչընդոտում են միջազգային լարվածության կողմնակիցները: Դրա հետևանքով մինչև այժմ չի ստեղծվել կոլեկտիվ անվտանգության համակարգ, չեն լուծվել զինաթափման էական խնդիրները: ՄԱԿ-ը երբեմն անհետևանք է թողել ագրեսիայի ակտերը, չեն կատարվել նրա բազմաթիվ որոշումները: ԱՄՆ-ը և նրա պարտնյորները բազմիցս փորձել են փոփոխել ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդի մշտական անդամների միաձայնության սկզբունքը, ՄԱԿ-ի կանոնադրությանը հակառակ, Գլխավոր ասամբլեայի օժանդակ մարմինների անվան տակ ստեղծել են մի շարք անօրինական մարմիններ (Միջնստաշրջանային կոմիտե, Կոլեկտիվ միջոցառումների կոմիտե, Կորեայի միավորման և վերականգնման հանձնաժողով ևն): ՄԱԿ-ի ներկա ամենահրատապ խնդիրը միջուկային պատերազմի կանխումն է և այդ նպատակով՝ բոլոր խաղաղասեր ուժերի համախմբումը: ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրներն ամեն ինչ անում են ՄԱԿ-ի արդյունավետ գործունեությունն ակտիվացնելու, նրա միջազգային հեղինակությունը բարձրացնելու համար: ՄԱԿ-ի շտաբ-կայանը գտնվում է Նյու Յորքում: Պաշտոնական լեզուներն են՝ անգլերենը, ֆրանսերենը, իսպաներենը, ռուսերենն ու չինարենը:

*Գրկ.* Организация Объединенных Наций, Сб. документов, М., 1956; Крылов С. Б., История создания Организации Объединенных Наций (2 изд.), М., 1960; Морозов Г. И., Организация Объединенных Наций, М., 1962; Советский Союз в Организации Объединенных Наций, т. 1—2, М., 1965; Советский Союз и Организация Объединенных Наций (1961—1965 гг.), М., 1968; ООН и международное экономическое сотрудничество, М., 1970; ООН: Итоги, тенденции, перспективы, М., 1970; Goodrich L. M., Hambro E., Charter of the United Nations, 2 ed., Boston, 1949; Kelsen H., The Law of the United Nations, L., 1951; Goodrich, L. M., Simons A. P., The United Nations and Maintenance of International Peace and Security, W., 1955. *Յու. Բաբաեղով*

**ՄԻԱՎՈՐՎԱԾ ԱԶԳԵՐԻ ԿՐԹՈՒԹՅԱՆ, ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՄՇԱԿՈՒՅԹԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆ, ՅՈՒՆԵՍԿՕ** (անգլ. UNESCO-United Nations Educational, Scientific and Cultural Organization), միջկառավարական կազմակերպություն, ՄԱԿ-ի մասնագիտացված հաստատություն: Գոյություն ունի 1946-ի նոյեմբ. 4-ից: 1981-ի հունվ. 1-ին ուներ 148 անդամ-պետություն (ՍՍՀՄ-ը, ՈՒՍՍՀ-ն և ԲՍՍՀ-ն՝ 1954-ից): Նպատակն է կրթության, գիտության ու մշակույթի ասպարեզում պետությունների միջև համագործակցության զարգացման միջոցով նպաստել խաղաղության ու միջազգային անվտանգության ամրապնդմանը, պահպանել մարդու հիմնական իրավունքներն ու ազատությունները՝ անկախ հասակից, սեռից, լեզվից կամ կրոնական պատկանելությունից: ՅՈՒՆԵՍԿՕ-ի գործունեությունն ընդգրկում է հարցերի լայն շրջանակ. անգրագիտության վերացում ու խտրականության դեմ պայքար կրթության ասպարեզում, երիտասարդության դաստիարակությունը խաղաղության ու միջազգային փոխըմբռնման ոգով, օժանդակություն ազգային կադրերի պատրաստման գործին, ազգային մշակույթների ուսումնասիրում, միջազգային համագործակցություն գիտության բնագավառում ևն: Կազմակերպում է միջազգային կոնֆերանսներ, հավաքներ, գիտաժողովներ (1979-ին՝ ավելի քան 200), ակտիվորեն մասնակցում է համաշխարհային հոբելյանական տարեթվերի անցկացմանը (այդ թվում՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակը, Կ. Մարքսի ծննդյան 150-ամյակը, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը, Դավիթ Անհաղթի ծննդյան 1500-ամյակը ևն): Սովետական Միության ու սոցիալիստական մյուս երկրների նախաձեռնությամբ ՅՈՒՆԵՍԿՕ-ն ընդունել է մի շարք որոշումներ՝ հօգուտ խաղաղության ամրապնդման, ռասայականության ու գաղութատիրության դեմ պայքարի ուժեղացման: Բարձրագույն մարմինը գլխավոր կոնֆերանսն է, գործադիր մարմինները՝ գործադիր խորհուրդն ու քարտուղարությունը, որը ղեկավարում է գլխավոր դիրեկտորը: Շտաբ-կայանը Փարիզում է: Հրատարակում է «Կուրիեր ՅՈՒՆԵՍԿՕ» հանդեսը (15 լեզվով, այդ թվում՝ ռուս.) և ավելի քան 20 այլ պարբերականներ:

**ՄԻԱՏԵՍԱԿԱՑՈՒՄ** տ ե խ ն ի կ ա յ ո ւ մ, միևնույն ֆունկցիոնալ նշանակման օբյեկտների թվի նպատակահարմար կրճատում: Առավել տարածված է մեքենաշինության և սարքաշինության մեջ: Տարբերում են ն ե ր տ ի պ ա յ ի ն (կատարվում է մեկ տիպի շինվածքների սահմաններում) և մ ի ջ տ ի պ ա յ ի ն (ընդգրկում է տարբեր տիպի շինվածքներ) Մ.: Շինվածքների Մ-մանը նախորդում է դրանց *տիպայնացումը*՝ մի շարք շինվածքների համար ընդհանուր կառուցվածքային պարամետրերով տիպային կոնստրուկցիաների մշակումը և սահմանումը: Մ-ման հիմնական նպատակներն են. աշխատանքի արտադրողականության բարձրացումը, արտադրանքի պատրաստման և շահագործման ծախսերի կրճատումը, որակի բարելավումը, շինվածքների համափոխարինելիության ապահովումը: ՍՍՀՄ արդյունաբերության մեջ Մ. իրականացվում է գործարանի, արդյունաբերության մեկ կամ մի քանի ճյուղերի մասշտաբով և, համապատասխանաբար, կոչվում գ ո ր ծ ա ր ա ն ա յ ի ն, ն ե ր ճ յ ո ւ ղ ա յ ի ն և մ ի ջ ճ յ ո ւ ղ ա յ ի ն: Մ. նպաստում է արտադրության մասնագիտացման զարգացմանը, կոմպլեքսային մեքենայացմանը և ավտոմատացմանը: ՍՍՀՄ ժող. տնտեսության մեջ Մ. *ստանդարտացման* նախապատրաստման և իրագործման առավել տարածված և արդյունավետ եղանակներից է: Մ-ի սկզբունքները կարող են կիրառվել մի քանի երկրներում: Օրինակ, Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ-երկրների մասշտաբով անց է կացվել էլեկտրոնային հաշվողական մեքենաների Մ., ստեղծվել ինտեգրալային սխեմաներով ԷՀՄ-ների միատեսակացված շարք: *Մ. Վարդանյան*

**ՄԻԱՏՈՒՆ ԲՈՒՅՍԵՐ**, բույսեր, որոնց միասեռ՝ արական (առէջքային) և իգական (վարսանդային) ծաղիկները գտնվում են միևնույն անհատի վրա: Մ. բ. են վարունգը, եգիպտացորենը, դդումը, ձմերուկը, վայրի խաղողը, տխլենին, կաղնին, կեչին, կոկոսյան արմավենին ևն: Մ. բ. կոչվում են նաև ծաղիկներ չունեցող այն բույսերը, որոնց արական և իգական սեռական օրգանները գտնվում են նույն բույսերի վրա. օրինակ, բազմաթիվ մամուռներ, ջրիմուռներ: Տես նաև *Երկտուն բույսեր*, *Բազմատուն բույսեր*:

**ՄԻԱՑՅԱԼ ԷՆԵՐԳԱՀԱՄԱԿԱՐԳ**, միասնական դիսպետչերական կետից կառավարվող, զուգահեռ աշխատող էներգահամակարգերի համախումբ: Էլեկտրաէներգիայի փոխանցումն առանձին էներգահամակարգերի միջև կատարվում է 220—800 *կվ* (ՍՍՀՄ-ում՝ 220—750 *կվ*) էլեկտրահաղորդման գծերով: ՍՍՀՄ-ում առաջին Մ. է.՝ Ուրալի Մ. է., ստեղծվել է 1942—43-ին՝ Սվերդլովսկի, Պերմի և Չելյաբինսկի էներգահամակարգերի հիման վրա: 1962-ին Ադրբեջանական, Վրացական և Հայկական ՍՍՀ-ների էներգահամակարգերի միավորմամբ ստեղծվել է Անդրկովկասյան Մ. է.: 1973-ին ստեղծված Սիբիրի Մ. է-ի կազմի մեջ են մտել Իրկուտսկի, Կրասնոյարսկի, Կուզ-

բասի, Նովոսիբիրսկի, Տոմսկի, Օմսկի և Բառնաուլի էներգահամակարգերը: 1978-ին ՍՍՀՄ-ում գործում էր 11 Մ. է. (Կենտրոնի, Միջին Վոլգայի, Ուրալի, Հյուսիս-Արևմուտքի, Հարավի, Հյուսիսային Կովկասի, Անդրկովկասի, Ղազախստանի, Սիբիրի, Միջին Ասիայի, Արևելքի): Էներգահամակարգերի միավորումը նպաստում է էլեկտրամատակարարման հուսալիության բարձրացմանը (միավորման մեջ մտնող էներգահամակարգերի փոխօգնության շնորհիվ) և էներգետիկական բեռնվածքների անհավասարաչափության նվազմանը: Մ. է-երի միջև բարձր լարման էլեկտրահաղորդման գծերի անցկացման միջոցով ստեղծվում է ՍՍՀՄ *միասնական էներգահամակարգ*:

*Հ. Աղոնց*

**ՄԻԱՑՅԱԼ ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ**, կրթական-մշակութային կազմակերպություն: Հիմնվել է 1881-ի հունիսի 1-ին, Կ. Պոլսում, *«Արարատյան ընկերություն հայոց»*-ի, *Դպրոցասիրաց-Արևելյան ընկերության* և *«Կիլիկյան ընկերության»* միավորումով: Նպատակն էր դպրոցներ հիմնել ու լուսավորություն տարածել Արևմտյան Հայաստանում, Կիլիկիայում, Թուրքիայի հայաբնակ վայրերում: Կազմակերպիչներն էին Մ. Փորթուգալյանը, Ա. Արփիարյանը, Զ. Շիշմանյանը, Հ. Թոռոսյանը, Մ. Չերազը, Հ. Շահնազարը, Հ. Ցուսուֆյանը, Հ. Ասատուրը և ուրիշներ: Ընկերության միջոցները գոյանում էին անդամավճարներից, նվիրատվություններից, կտակներից: Գործունեության հենց սկզբին ընկերությունը հիմնել է շուրջ 30 վարժարան և նախակրթարան: Ենթարկվելով համիդյան կառավարության հալածանքներին՝ Մ. ը. հ. ժամանակավորապես դադարել է գործելուց: Վերստին սկսել է գործել 1911—12-ին. ընկերության ջանքերով բացվել են 85 վարժարան, հաստատություն ուսուցիչների համար, ամառային մանկավարժական և գյուղատնտեսական դասընթացներ, որբանոց-արհեստանոց: Մ. ը. հ. գոյատևել է մինչև 1915-ի Մեծ եղեռնը:

Գրկ. Պողոսյան Ե., Պատմություն հայ մշակութային ընկերություններու, հ. 1, Վնն., 1957:

*Հ. Դավթյան*

**ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐ**, Միացյալ նահանգների հանրապետություն, նիդերլանդական յոթ նահանգներ (Հոլանդիա, Զելանդիա, Ուտրեխտ, Գելդերն, Ֆրիսլանդիա, Գրոնինգեն, Օվերյսել), որոնք XVI դ. Նիդերլանդական բուրժ. հեղափոխության հետևանքով ազատագրվեցին իսպանական տիրապետությունից և ստեղծեցին աշխարհում առաջին բուրժ. հանրապետությունը: Առաջատար նահանգի՝ Հոլանդիայի անունով կոչվել են նաև Հոլանդական հանրապետություն, Հոլանդիա: Գոյատևել է մինչև 1795-ը: Տես *Նիդերլանդներ* (պատմական ակնարկը):

**ՄԻԱՑՈՒՄՆԵՐ** շինարարական կոնստրուկցիաներում, կոնստրուկցիան կազմող տարրերի ամրակումներ: Մ-ի միջոցով կոնստրուկցիայի մի տարրից ճիգերը փոխանցվում են մյուսին: *Պողպատե կոնստրուկցիաներում* հիմնականում կիրառվում են եռակցովի, զամային և հեղուսային Մ.: Հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաներում օգտագործվում են եռակցովի, հազվադեպ՝ հեղուսային և բետոնով լցրած կարանով (միաձուլված) Մ. (տես *Երկաթբետոնե կոնստրուկցիաներ և շինվածքներ*): *Փայտե կոնստրուկցիաներում* տարածված են թորթերով, երիթներով, փայտամեխերով, հեղույսներով, սոսինձներով Մ.:

**ՄԻԱՑՈՒՄՆԵՐ ԴԵՏԱԼՆԵՐԻ**, դետալների կոնստրուկտիվ ամրակում՝ նրանցից մեխանիզմներ, ագրեգատներ, սարքեր պատրաստելու նպատակով: Շարժական միացումները կազմում են կինեմատիկական զույգեր (լիսեռն առանցքակալում, պտուտակը մանեկում ևն): Անշարժ միացումների օգնությամբ պարզ դետալներից ամրակման միջոցով ստացվում են բարդ դետալներ: Դետալների անշարժ միացումները լինում են երկատվող (պտուտակային և հեղուսային միացումներ) և չերկատվող (կատարվում են մամլակցման, եռակցման և գամային միացման միջոցով):

**ՄԻԱՓՈՐԻ ԼԵՌՆԱՇՂԹԱ**, Փոքր Կովկասի լեռնային համակարգում, Հայկական ՍՍՀ Կրասնոսելսկի և Շամշադինի շրջաններում: Սկսվում է Աղստև գետի հովտից, ձգվում հվ-արլ. ուղղությամբ մինչև Քաշաթաղ լեռնագագաթը: Ջրբաժան է Գետիկի և Հախում, Տավուշ, Խնձորուտ գետերի միջև: Երկարությունը 54 *կմ* է, առավելագույն բարձրությունը՝ 2993 *մ* (Մուրղուզ լեռ): Ծալքաբեկորային, էրոզիոն դենուդացիոն լեռնաշղթա է՝ կազմված քվարցային պորֆիրիտներից և գրանիտային ինտրուզիաներից: Ունի անհամաչափ կառուցվածք: Արմ. և հվ. լանջերը կարճ են (3—7 *կմ*), զառիթափ, արլ. լանջերն ունեն մեղմ թեքություն: Հս. և արլ. լանջերից սկսվում են Պայտասարի, Հախումի, Գետնաց, Տավուշի և Խնձորուտի լեռնաբազուկները:

Հողաբուսական ծածկույթը ենթարկված է ուղղաձիգ գոտիականության: Տարածված են լեռնաանտառային դարչնագույն, լեռնատափաստանային և լեռնամարգագետնային հողերը: Մինչև 2000 *մ* բարձրությունները լանջերն անտառածածկ են (կաղնի, հաճարենի, բոխի): Կան երրորդական դարաշրջանից մնացած կարմրածառի պուրակներ: 2000—2400 *մ* բարձրությունների վրա աճում են նոսր անտառներ ու մերձալպյան մարգագետիններ, ավելի բարձր՝ ալպյան մարգագետիններ: Մ. լ-ի հվ-արմ. լանջերն ընդգրկված են Դիլիջանի արգելոցի մեջ: Բարձրադիր վայրերն օգտագործվում են որպես արոտավայրեր:

*Ֆ. Գևորգյան*

**ՄԻԱՖԱԶ ՀՈՍԱՆՔ**, *փոփոխական հոսանք*, որն արտադրվում է մեկ կամ ըստ ֆազի համընկնող մի քանի էլշուով աղբյուրից (գեներատորից): Այսպիսի հոսանքի հաղորդման համար բավական է ընդամենը 2 հաղորդալար: Մ. հ. նկարագրվում է փոփոխական հոսանքի ընդհանուր օրենքներով:

**ՄԻԳԱՄԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ** արտագալակտիկական, մեր *Գալակտիկային* նմանվող աստղային համակարգեր. նույնն են, ինչ որ *գալակտիկաները*:

**ՄԻԳԱՄԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ** գալակտիկական, միջաստղային գազի կամ փոշու լուսավոր և մութ ամպեր: Տարբերում են դիֆուզ, մոլորակաձև, գիսավորաձև, *գերնոր աստղերի* բռնկման մնացորդներից առաջացած և *Վոլֆ-Ռայեի աստղերի* շուրջը գոյացած Մ.:

**Դիֆուզ Մ.** մի քանի րոպեից մինչև մի քանի աստիճանի անկյունային չափերով, անկանոն տեսքի լուսավոր և մութ գոյացումներ են: Լուսավոր տիրույթները բաժանվում են երկու տեսակի՝ էմիսիոն և անդրադարձնող Մ-ի, իսկ մութ տիրույթներին անվանում են մութ Մ.: Էմիսիոն Մ. (նկ. 1) H II (իոնացված ջրածնի) տիրույթներ են, որոնք կարող են ունենալ մի քանիսից մինչև մի քանի հարյուր արեգակնային զանգված, իսկ այդ Մ-ից կազմված կոմպլեքսների զանգվածները կարող են հասնել մինչև մի քանի հզ. արեգակնային զանգվածի: Էմիսիոն Մ. լուսավորվում են O դասի աստղերով (տես *Աստղերի սպեկտրալ դասակարգում*), որոնց մակերևույթի ջերմաստիճանը 25000—50000 K է: Այս աստղերի ուլտրամանուշակագույն ճառագայթումը իոնացնում և գրգռում է մի քանի *պս*-ից մինչև մի քանի տասնյակ *պս* (կախված Մ-ի մեջ գազի խտությունից) հեռավորության վրա գտնվող H, He, O, N, S և այլ տարրերը՝ առաջացնելով Մ-ի սպեկտրը: Էմիսիոն Մ-ի սպեկտրների օպտիկական մասում դիտվում են H-ի և He-ի ռեկոմբինացիոն ծագում ունեցող էմիսիոն գծեր ու անընդհատ ճառագայթում, [OIII], [OII], [NII], [HeIII], [SII] և այլ իոնների արգելված գծեր: Սպեկտրների ամենապայծառ գծերը ջրածնի բալմերյան սերիայի (տես *Սպեկտրներ ատոմային*), ինչպես նաև [OII] և [OIII]-ի էմիսիոն գծերն են: Սպեկտրի ռադիոտիրույթում դիտվում են ջերմային բնույթի անընդհատ ճառագայթում, H-ի և He-ի ռեկոմբինացիոն գծեր, OH-ի և $H_2O$-ի գծեր ևն: Էմիսիոն Մ-ի ջերմաստիճանը մոտավորապես 8000 K է: **Անդրադարձնող Մ.** գազափոշային խիտ ամպեր են, որոնք հիմնականում լուսավորվում են իրենց մոտ գտնվող B5—B9 սպեկտրալ դասերի աստղերի լույսի անդրադարձումով: Այս Մ-ի սպեկտրները նման են լուսավորող աստղերի սպեկտրներին: Անդրադարձնող Մ. ավելի փոքր են, ըստ պայծառության ավելի թույլ՝ քան էմիսիոն Մ.: **Մութ Մ.** գազափոշային խիտ ամպեր են, որոնց մոտակայքում չկան գրգռող կամ լուսավորող աստղեր: Մութ Մ-ի միջով անցնելիս լույսը կլանվում է, որի հետևանքով Ծիր կաթնի կամ լուսավոր Մ-ի ֆոնի վրա դրանք երևում են որպես մութ կազմավորումներ: Այս տեսակի Մ-ի ֆիզիկական պայմանները և կինեմատիկան ուսումնասիրվում են միջաստղային ծագում ունեցող գծերի դիտման, HI-ի 21 *սմ* ալիքի երկարությամբ ճառագայթված գծի ռադիոդիտման և այլ եղանակներով: Մութ Մ. HI տիրույթներում ջերմաստիճանը մոտավորապես 50 K է, խտությունը՝ $10^2$—$10^4$ *մոլ/սմ*$^3$: Այս Մ-ում հայտնաբերվել են մոլեկուլային սառը, խիտ ամպեր, որոնց խտությունը $10^4$—$10^7$ մոլեկուլ 1 *սմ*$^3$-ում է, իսկ ջերմաստիճանը՝ մոտավորապես 5 K: Մութ Մ-ում հայտնաբերվել են նաև 1-ից մինչև 10 աստղագիտական միավորի հասնող չափերով և

$10^6$—$10^7$ մոլեկուլ 1 *սմ*³-ում խտությամբ մազերային (OH և $H_2O$) ճառագայթման կոմպակտ աղբյուրներ, որոնք շարժվում են միմյանց նկատմամբ մի քանի *կմ/վրկ* արագությամբ:

**Մոլորակաձև Մ.** (նկ. 2, *ա*) փոքր անկյունային չափերով (մի քանի *վրկ*-ից մինչև մի քանի *ր*), սկավառակաձև, օղակաձև կամ աստղաձև էմիսիոն Մ. են: Ներկայումս հայտնի են հզ-ից ավելի մոլորակաձև Մ., որոնց մոտ կեսը աստղաձև է, իսկ մնացածները հիմնականում սկավառակաձև և օղակաձև են: Մոլորակաձև Մ-ի կենտրոնում գտնվում են դրանք ծնող և դրանց լուսավորումն ապահովող միջուկները՝ Վոլֆ-Ռայեի տիպի և O դասի աստղեր, որոնց մակերևույթների ջերմաստիճանը 50000—100000 K է: Մոլորակաձև Մ. լուսավորվում են դիֆուզ էմիսիոն Մ-ի նման, այդ պատճառով դրանց սպեկտրային կառուցվածքները միմյանց նման են: Մոլորակաձև Մ-ի միջուկների բարձր ջերմաստիճանի հետևանքով դրանց ատոմների իոնացման աստիճանը ավելի մեծ է, քան դիֆուզ էմիսիոն Մ-ինը, այդ պատճառով առաջինների սպեկտրների բարձր գրգռվածության գծերը ավելի ինտենսիվ են. ամենապայծառը [OIII] գծերն են: Տաք գազի ճնշման հետևանքով մոլորակաձև Մ. ընդարձակվում են 10—40 *կմ/վրկ* արագությամբ: Այս Մ-ի ջերմաստիճանները հասնում են 10000—20000 K, միջին խտությունը մի քանի հզ. *ատոմ/սմ*³ է: Մոլորակաձև Մ-ի կյանքի տևողությունը մոտ $10^4$ տարի է, որի ընթացքում միջուկները էվոլյուցիա են ապրում և, հավանաբար, վերածվում *սպիտակ թզուկների*: Մոլորակաձև և դիֆուզ Մ-ի ուսումնասիրման կարևորագույն մեթոդներ են մշակել Վ. Հ. *Համբարձումյանը*, Զանսթրան (Նիդերլանդներ), Բոուենը (ԱՄՆ), Ստրյոմգրենը (Շվեդիա) և ուրիշներ: Շնորհիվ այդ աշխատանքների հիշատակված օբյեկտների՝ ֆիզիկան այնքան է զարգացել, որ կրում է դասական բնույթ:

**Գիսավորաձև Մ.** մեծամասամբ *գիսավորի* կամ կոնի տեսք ունեցող գազա-փոշային կազմավորումներ են, որոնց գագաթում գտնվում է լուսավորող աստղը: Այս Մ-ի տիպիկ օրինակն է NGC 2261-ը, այսպես կոչված Հաբլի միգամածությունը (նկ. 2, *բ*), որի չափերը մի քանի րոպեի կարգի են: Երբեմն գիսավորաձև Մ. ունենում են երկխոռոչ կոնի տեսք. այդ դեպքում լուսավորող աստղը գտնվում է կոների միացման տեղում: Լուսավորող աստղերը փոփոխականներ են, որոնց սպեկտրներում դիտվում են H-ի և CaII-ի ինչպես էմիսիոն, այնպես էլ կլանման գծեր, FeII, TiII, CrII և այլ տարրերի էմիսիոն գծերը: Գիսավորաձև Մ-ի սպեկտրները, ընդհանուր առմամբ, նման են լուսավորող աստղերի սպեկտրներին, միայն որոշ գծեր (H, CaII և այլ տարրեր) երբեմն ավելի պայծառ են:

**Գերնոր աստղերի մնացորդներից առաջացած Մ.** գերնոր աստղերի բռնկման արդյունք են, որոնք ընդարձակվում են մի քանի հզ. *կմ/վրկ* արագությամբ, երևում են բռնկումից մի քանի հարյուր տարի հետո, ունեն թելիկավոր կառուցվածք և էմիսիոն Մ-ի սպեկտրների նման սպեկտրներ: Գերնորերի մնացորդները միաժամանակ սինքրոտրոն ճառագայթման հզոր աղբյուրներ են. այդ ճառագայթումը դրսևորվում է սպեկտրի օպտիկական և ռադիոտիրույթներում: Այս տեսակի որոշ Մ-ում (օրինակ, NGC 1952 կամ Խեցգետնաձև Մ.) դիտվել են *պուլսարներ*, որոնք աստղային բռնկման մնացորդներ են:



Նկ. 1. NGC 6611 դիֆուզ, էմիսիոն միգամածություն



Նկ. 2. *ա*—NGC 6720 մոլորակաձև, *բ*—NGC 2261 գիսավորաձև միգամածություններ (նկարները ստացվել են Բյուրականի աստղադիտարանում)

**Վոլֆ-Ռայեի աստղերի շուրջ առաջացած Մ.** աստղից դուրս շպրտված նյութի (մոտ 1000 *կմ/վրկ* արագությամբ) և միջաստղային գազի փոխազդեցության արդյունք են: Դրանք օղակաձև էմիսիոն Մ. են, որոնք ունեն նուրբ թելիկներ և շրջապատում են Վոլֆ-Ռայեի աստղերը: Այդ Մ-ի բնորոշ օրինակ է NGC 6888, որն առաջացել է HD 192163 Վոլֆ-Ռայեի տիպի աստղի շուրջը:

*Գրկ.* Гурзадян Г. А., Планетарные туманности, М., 1962; Каплан С. А., Пикельнер С. Б., Межзвездная среда, М., 1963; Аллер Л., Лиллер У., Планетарные туманности, пер. с англ., М., 1971.

*Մ. Ղազարյան*

**ՄԻԳԴՈՆԻԱ** (հուն. Μυγδονία, հայկ. աղբյուրներում՝ Արուաստան, ասորականում՝ Բեյթ Արաբայե կամ Ղարոբ, բյուզանդականում՝ Βεαρβαές), պատմական երկիր: Գտնվել է Միջագետքի հս-արլ. մասում և տարածվել Մասիոս լեռներից ու Խաբուր գետից արլ.՝ մինչև Տիգրիս (5850 *կմ*² տարածություն): Խաբուր գետով բաժանվել է Օսրոենեից: Մինչև մ. թ. 37-ը Մ. եղել է Մեծ Հայքի կազմում և Հայաստանի հվ. սահմանի կարևոր նահանգներից մեկը: 37-ին պարթևաց արքա Արտավան III Մ. անջատել է Հայաստանից և կցել Ադիաբենեի թագավորությանը: Մ-ի մայրաքաղաքը Մծբինն էր, որը հուն. աղբյուրներում կոչվել է նաև Միգդոնիա-Անտիոք: Տես նաև *Արվաստան*:

*Գրկ.* Երեմյան Ս., Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, Ե., 1963: Страбон, География, М., 1964, с. 692.

*Հ. Մելքոնյան*

**ՄԻԳՄԱՏԻՏ** (< հուն. μίγμα, սեռական հոլովը՝ μίγματος — խառնուրդ), բարդ կազմության մագմատիկ ապար: Առաջանում է *մագմայի*՝ շրջապատի ապարների մեջ ներդրման շնորհիվ (սովորաբար մագման ներթափանցում է ապարների շերտավորությունների մեջ): Զանազանում են մի քանի տարբերակներ՝ ագմատիտներ, արտերիտներ, դիկտիոնիտներ, նեբուլիտներ, պտիգմատիտներ ևն: Մ-ները սերտորեն կապված են *գրանիտացման* պրոցեսների հետ և սովորաբար լայն տարածում ունեն հատկապես գրանիտոիդային համալիրների զարգացման շրջանում (Ֆինլանդիա, Կոլա թերակղզի):

**ՄԻԳՐԱՑԻԱ** (լատ. migratio, < migro — անցնել, վերաբնակվել) բնակչության, մարդկանց տեղաշարժ՝ կապված մշտական կամ ժամանակավոր բնակավայրը փոխելու հետ: Ընդգրկում է բնակավայրից հեռացողների (էմիգրացիա՝ արտագաղթ) ու եկողների (իմիգրացիա՝ ներգաղթ) խմբերը: Դրանց գումարն արտահայտում է Մ-ի ընդհանուր, իսկ տարբերությունը՝ զուտ մեծությունը: Տես *Գաղթ*:

**ՄԻԳՐԱՑԻԱ** կենդանիների, կենդանիների գաղթ, կենդանիների տեղաշարժեր՝ կապված տարածման շըրջաններում գոյության պայմանների փոփոխության կամ զարգացման ցիկլի առանձնահատկությունների հետ: Կարող է կատարվել հորիզոնական (ցամաքում և ջրում) և ուղղաձիգ (լեռներում, հողում, ջրի խորքերում, բուսածածկում) ուղղություններով՝ ակտիվ և պասսիվ: Տարբերում են կանոնավոր (սեզոնային կամ օրական) և անկանոն (երաշտի, հրդեհի ևն դեպքում) Մ-ներ: Կաթնասուններից ամենահեռավոր Մ. կատարում են կետերը, փոկերը, ծովացուլերը: Կետերի բազմաթիվ տեսակներ ամեն տարի Խաղաղ և Ատլանտյան օվկիանոսների բևեռային շրջաններից տեղափոխվում են մերձարևադարձային և արևադարձային գոտիները և դեպի ետ, փոկերը՝ Հյուսիսային սառուցյալ օվկիանոսի սառույցներից մինչև Սպիտակ ծով: Տարածման շրջաններում բարձր խտության դեպքում տեղի են ունենում սկյուռների, բևեռային աղվեսների, լեմինգների ևն զանգվածային Մ-ներ, երբ հազարավոր անհատներ նշանակալի ջրային խոչընդոտներ հաղթահարելով, լայն ճակատով շարժվում են մեկ ուղղությամբ: Առավել լավ ուսումնասիրված են թռչունների Մ-ները (տես *Թռչունների չու*): Սողուններից հեռավոր Մ-ներ են կատարում ծովային կրիաները (մինչև 2000 *կմ*): Մ-ները ձկների կենսական ցիկլի բնորոշ առանձնահատկություններից են (տես *Ձկներ*): Միջատների Մ-ները սովորաբար համընկնում են տարաբնակեցման հետ (ասիական, անապատա-

յին մոդելներ են) և կախված են զարգացման ցիկլի առանձնահատկություններից, քամու ուժից և ուղղությունից, մթնոլորտային ճնշումից, ջերմաստիճանից, խոնավությունից, տեղի ռելիեֆից են: Պլանկտոնային օրգանիզմների ճնշող մեծամասնությանը բնորոշ են սեզոնային և օրական ուղղաձիգ Մ-ները: Մ-ի անհրաժեշտ պայման է կենդանիների կողմնորոշման ընդունակությունը (արևի, լուսնի, աստղերի, ափերի, լեռների գծագրության, երկրի մագնիսական դաշտի են միջոցներով): Մ-ների ուսումնասիրությունն անհրաժեշտ է բազմաթիվ ձկների, թռչունների և մորթատու գազանների հաջող արդյունահանման, ինչպես նաև վնասատուների (օրինակ, չվող մորեխի) և վարակիչ հիվանդություններ տարածող կենդանիների դեմ պայքարի համար:

*Գ. Ավագյան*

**ՄԻԳՐԵՆ**, տես *Անգար*:

**ՄԻԴԱՍ** (հուն. Μίδας), Փռյուգիայի թագավոր մ. թ. ա. 738—696-ին: Հիշատակվում է մ. թ. ա. VIII դ. վերջի ասորեստանյան աղբյուրներում: Մ. թ. ա. 717-ին դաշնակցելով Ուրարտուին՝ պայքարել է Ասորեստանի Սարգոն II թագավորի դեմ, սակայն պարտվել է և հպատակվել (մ. թ. ա. 707-ին):

Հին հուն. դիցաբանությունում Մ-ի հետ կապված են բազմաթիվ ավանդություններ: Մ. իբր գերությունից փրկել և Դիոնիսոսին է վերադարձրել նրա ուսուցչին՝ Սիլենոսին: Դրա դիմաց Դիոնիսոսը կատարել է Մ-ի ցանկությունը, նրան օժտել մարմնի հպումով ամեն ինչ ոսկու վերածելու կարողությամբ: Սակայն շուտով, սովամահ լինելու վտանգի տակ, Դիոնիսոսի օգնությամբ ազատվել է այդ շնորհից՝ լողանալով Պակտոլոս գետում: Մի այլ ավանդության համաձայն, Մ. եղել է Ապոլլոնի և Պանի (մեկ այլ տարբերակով՝ Մարսիասի) երաժշտական մրցության դատավորը և իր տգիտության պատճառով հաղթանակը շնորհել է Պանին (այստեղից էլ «միդասյան դատ», այսինքն՝ տգետի դատ արտահայտությունը): Զայրացած Ապոլլոնը ձգել երկարացրել է Մ-ի ականջները: Մ. փռյուգիական գլխարկի տակ թաքցրել է երկար ականջները, սակայն ի վերջո այն հայտնի է դարձել բոլորին (այստեղից էլ «միդասյան ականջներ», այսինքն՝ տգիտությունն ու հիմարությունը չի կարելի թաքցնել) արտահայտությունը:

**ՄԻԴԵԼԱՅԻՆ ՀԱՏՎԱԾՔ**, միդել (հոլանդերեն՝ middel, բառացիորեն՝ միջին), ջրում կամ օդում շարժվող մարմինների (օրինակ, նավի իրանի, ինքնաթիռի ֆյուզելաժի են) համար. մարմնի շարժմանն ուղղահայաց հարթության մեջ գտնվող ամենամեծ մակերես ունեցող հատույթ: Մ. հ-ի մակերես ասելով, հասկանում են նաև մարմնի՝ շարժմանն ուղղահայաց հարթության վրա պրոյեկցիայի մակերեսը:

**ՄԻԴԵՆԴՈՐՖ** Ալեքսանդր Ֆեոդորովիչ (1815—1894), ռուս բնախույզ, ճանապարհորդ: Պետերբուրգի ԳԱ ակադեմիկոս (1850): 1842—45-ին ճանապարհորդել է Հյուսիսային ու Արևելյան Սիբիրում, Հեռավոր Արևելքում են: Մ-ի ճանապարհորդական հաշվետվությունն իր ժամանակի համար եղել է Սիբիրի առավել լրիվ բնապատմական նկարագրությունը. հատկապես կարևոր էին Սիբիրում հավերժական սառածության տարածման և բուսականության գոտիական տեղաբաշխվածության մասին նրա եզրակացությունները: 1870-ին ուսումնասիրել է Բարաբայի տափաստանը, 1878-ին՝ Ֆերգանայի հովիտը: 1883—85-ին ղեկավարել է Ռուսաստանում անասնապահության վիճակն ուսումնասիրող արշավախումբը: Զբաղվել է ձիաբուծության և տավարաբուծության սելեկցիայի հարցերով: Մ-ի անունով են կոչվում հրվանդան Նոր երկիր կղզում և ծոց՝ Թայմիր թերակղզում:

**ՄԻԴԻԱՆԵՐ** (Mytilus), երկփեղկանի փափկամորթների սեռ: Մարմինը ամփոփված է մինչև 20 *սմ* երկարությամբ սեպաօվալաձև խեցիում: Մեջքի կողմից փեղկերը միանում են փակող մկաններով: Փորի կողմում ունեն մկանային ելուստ՝ «ոտք», որտեղ տեղադրված է բիսուսային գեղձը: Վերջինս արտադրում է հատուկ թելեր, որով Մ. ամրանում են հիմքին: Շնչառության և սննդառության համար անհրաժեշտ ջրի շրջապտույտը (խոշոր Մ-ի համար օրական մինչև 70 *լ*) կատարվում է թիկնոցի խոռոչում: Բաժանասեռ են, բեղմնավորումը կատարվում է ջրում: Էգը դնում է մինչև 25 մլն ձվաբջիջ, որոնցից առաջացած թրթուրներն իջնում են հատակ և դառնում հասուն անհատներ: Մ. տարածված են Հյուսիսային կիսագնդի մերձարևադարձային և բարեխառը ծովերում, ՍՍՀՄ-ում՝ Բալթիկ, Սև, Ազովի ծովերում և Հեռավոր Արևելքում: Հանդիպում են մինչև 250 *մ* խորություններում, գլխավորապես առափնյա շերտում: M. edulis տեսակի միսը սննդարար է, օգտագործվում է եփած և պահածոյացված վիճակում: Մ-ից ընտանի թռչունների համար պատրաստում են բարձրորակ կերայուր: Առանձին տեսակներ բուծվում են արհեստականորեն:

**ՄԻԴԼՍԲՐՈ** (Middlesbrough), քաղաքկոմսություն Մեծ Բրիտանիայի Նորթ Ռայդինգ կոմսությունում: 154 հզ. բն. (1976): Գտնվում է Տիս գետի էստուարում: Սև մետալուրգիայի խոշոր կենտրոն է, կա մեքենաշինություն, քիմ. արդյունաբերություն: 1971-ից մտնում է Տիսսայդ կոնուրբացիայի կազմի մեջ:

**ՄԻԴՀԱԹ ՓԱՇԱ** Ահմեդ (1822—1883), թուրք քաղաքական և պետական գործիչ: Թուրք. նորաստեղծ բուրժուազիայի շահերի արտահայտիչ, հարել է «*Նոր օսմանյաններ*» գաղտնի քաղ. կազմակերպությանը: 1864—68-ին եղել է Դանուբի վիլայեթի նահանգապետը, որտեղ անցկացրել է սուլթանի իշխանությունն ամրապնդող ռեֆորմներ, դաժանորեն ճնշել բուլղարների ազգային-ազատագրական պայքարը: 1869—72-ին՝ Բաղդադի վիլայեթի նահանգապետ և պետ. խորհրդի նախագահ, 1873—74-ին և 1876—77-ին՝ մեծ վեզիր: Մ. Փ. գլխավորել է թուրք. սահմանադրական շարժումը, հեղինակն է 1876-ին ընդունված թուրք. առաջին սահմանադրության (որի ստեղծմանը գործոն մասնակցություն է ունեցել հայ գործիչ Գրիգոր *Օտյանը*): Զգտելով թուրք. ազգային բուրժուազիային մասնակից դարձնել կայսրության կառավարմանը և ստեղծել սահմանադրական միապետություն՝ իրականացրել է կիսառեֆորմներ: Սուլթան Աբդուլ Համիդ II, Մ. Փ-ի գործունեությունը դիտելով իբրև իր իրավունքների սահմանափակում, նրան աքսորել է Եվրոպա: 1878-ին սուլթանի հրամանով վերադարձել է և նշանակվել սկզբում Սիրիայի, ապա Զմյուռնիայի նահանգապետ: Սուլթան Աբդուլ Ազիզի սպանությանը (1876) մասնակցելու կեղծ մեղադրանքով 1881-ին աքսորվել է Արաբիա, ուր նրան խեղդամահ են արել Աբդուլ Համիդի գործակալները: *Ե. Սարգսյան*

**ՄԻԴՈՅԱՆ** Ավետիք Ավետիքի (ծն. 2.11. 1915, Բաթում), հայ սովետական բժիշկ, ուրոլոգ: Բժշկ. գիտ. թեկնածու (1969), ՀՍՍՀ վաստ. բժիշկ (1963): ՀՍՍՀ-ում ուրոլոգիայի հիմնադիրը: 1941-ին ավարտել է Օդեսայի բժշկ. ինստ-ը: Աշակերտել է պրոֆ. Ռ. *Ցոլյանին*: Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: 1942—1970-ին աշխատել է Երևանի 3-րդ կլինիկական հիվանդանոցում, ուր նրա նախաձեռնությամբ 1960-ին բացվել է ուրոլոգիական բաժանմունք և կազմակերպվել (1963) «արհեստական երիկամ» լաբորատորիա: 1960-ից ՀՍՍՀ առողջապահության մինիստրության գլխավոր ուրոլոգն է, ՀՍՍՀ առողջապահության մինիստրության 4-րդ գլխավոր վարչության ուրոլոգ-խորհրդատու: 1970-ից Երևանի բժշկ. ինստ-ի ուրոլոգիայի ամբիոնի վարիչն է:

Գիտական աշխատանքները վերաբերում են որովայնի օրգանների վիրաբուժությանը, տրավմատիզմի և ինֆեկցիայի դեմ պայքարի, ուրոլոգիայում կորտիզոնի կիրառման հարցերին: Մ. ՀՍՍՀ-ում առաջինն է հաջողությամբ կիրառել հեմոդիալիզի մեթոդը՝ սուր երիկամային անբավարարության դեպքում, կատարել երիկամների մասնատում՝ երիկամաքարային հիվանդության բուժման և կանխարգելման նպատակով, միզապարկի հեռացում և պատվաստում: «Սուր որովայնի» ախտորոշման նպատակով կիրառել է քրոնոցիստոսկոպիայի, իսկ երիկամային խիթի դեպքում՝ իզոտոպային ռենոգրաֆիայի մեթոդները: Մ. աշխատակիցների հետ համատեղ գործնական ուրոլոգիայում ներդրել է 12 նորարարություն:

Մ. 1963-ից ՀՍՍՀ ուրոլոգների ընկերության նախագահն է, 1965-ից՝ Ուրոլոգների համամիութենական ընկերության վարչության անդամ: ՀՍՍՀ X գումարման Գերագույն սովետի դեպուտատ է:

**ՄԻԵԼՈԳՐԱՖԻԱ** (< հուն. μυελός — ոսկրածուծ և ... *գրաֆիա*), ողնուղեղագրություն, ողնուղեղի ենթաոստայնային (սուբարախնոիդային) տարածության ռենտգենյան հետազոտման եղանակ: Կատարվում է ողնաշարային խողովակի մեջ կոնտրաստային նյութ ներարկելով՝ վերջինիս անցանելիությունը որոշելու համար: Կիրառվում է ողնուղեղի ուռուցքների, ուղեղաթաղանթների բորբոքային պրոցեսների, միջողնային արտացցվածքների ախտորոշման նպատակով: Ռադիոիզոտոպային Մ-ի միջոցով որոշվում է ողնաշարային խողովակի անցանելիությանը խոչընդոտող

ուռուցքների, կպումների տեղադրությունը: Կատարվում է գոտկային պունկցիայի միջոցով ողնուղեղի ենթառոստայնային տարածության մեջ ռադիոակտիվ գազի խառնուրդով օդի բշտիկ ներարկելով:

**ՄԻԵԼՈՄԱ** (< հուն. μυελός — ոսկրածուծ և ωμα — ուռուցքների անվանման վերջածանց), միելոմային հիվանդություն, միելոմատոզ, *լեյկոզների* (ռեթիկուլոզ) խմբի արյան հիվանդություն: Պայմանավորված է ոսկրածուծի ժառանգականորեն փոփոխված (մուտացիայի ենթարկված) պլազմատիկական բջիջների ավելցուկային առաջացմամբ, որոնք սինթեզում և արյան մեջ արտադրում են ֆիզիկա-քիմ., կենսաքիմ. և իմունա-քիմ. տարբեր հատկություններով օժտված սպիտակուցներ: Մ. արտահայտվում է ոսկրային, արյունաստեղծման, միզային համակարգերի փոփոխություններով, սպիտակուցային և հանքային փոխանակության խանգարումներով: Հիմնական ախտանշանները. կրծքավանդակի, կոնք-ազդրային, ողնաշարի ոսկրերի ցավեր: Հետագայում ոսկրերը ձևափոխվում են, առաջանում են ինքնաբեր կոտրվածքներ, ոսկրային հյուսվածքից սկիզբ առնող ուռուցքներ: Մ-ի ժամանակ օրգանիզմում պակասում է բնականոն իմունոգլոբուլինների քանակությունը, խանգարվում հակամարմինների առաջացումը, որի հետևանքով հնարավորություն է ստեղծվում բակտերիային վարակիչ հիվանդությունների զարգացման համար:

Բուժումը. ցիտոստատիկ (բջիջների աճումը դադարեցնող) պատրաստուկներ, ճառագայթաբուժություն, հորմոնային պատրաստուկներ, արյան էրիթրոցիտային զանգվածի, ամբողջական արյան ներարկում: Վարակիչ հիվանդություններով բարդանալիս՝ անտիբիոտիկներ, գամմա-գլոբուլին, անհրաժեշտության դեպքում՝ օրթոպեդիական միջոցառումներ:

**ՄԻԽՈԼԱՈՒԿ**, Միխոլաուկս (իսկական ազգանունը՝ Ֆրիդֆելդ), Ալեքսիս (1866—1943), լատիշ թատերական գործիչ, ռեժիսոր և դերասան: Ազգային ռեժիսուրայի հիմնադիրը: Մ-ի արվեստը ծաղկման է հասել Ռիգայի նոր թատրոնում (գլխավորել է 1909—11-ին և 1914—1915-ին): Մ-ի բեմադրած Ռայնիսի «Կրակ և գիշեր» (1911) ներկայացումը լատիշական թատրոնի պատմության մեջ էտապային նշանակություն է ունեցել: Հետագայում աշխատել է Պետրոգրադի նոր լատիշական (1915), Սովետական Լատվիայի բանվորական (1919), Ազգային (1919—38, 1919—21-ին՝ դիրեկտոր) թատրոններում: Բեմադրություններից են՝ Ռայնիսի «Իոսիֆը և նրա եղբայրները» (1920), «Նվագել եմ ես, պարել» (1921), լավագույն դերերից՝ Կլենգա (Բլաումանիսի «Կրակի մեջ»), Ատտինհաուզեն (Շիլլերի «Վիլհելմ Տել»), Բելուգին (Ա. Օստրովսկու և Սոլովյովի «Բելուգինի ամուսնությունը»):

**ՄԻԶԱԶԱՏՈՒԹՅՈՒՆ**, միզարտադրություն, միզապարկում հավաքված *մեզի* հեռացումն օրգանիզմից: Միզագոյացումը տեղի է ունենում անընդհատ, Մ.՝ պարբերաբար (մարդու մոտ օրական 4—6 անգամ), միզապարկի լցման (300—350 *մլ* մեզ) և պատերի լարվածության մեծացման հետևանքով: Միզապարկում, երբ ճնշումը հասնում է 15—20 *մմ սնդ. ս.*, գրգռվում են պատերում գտնվող մեխանաընդունիչները և առաջացնում Մ-յան մղում: Ուժեղանում են միզածորանների գալարակծկանքը և միզապարկի մկանների կծկումները, թուլանում է սեղմանը (սֆինկտեր), և տեղի է ունենում Մ.: Միզապարկի մկանների ախտահարումները, նյարդային համակարգի որոշ հիվանդությունները հանգեցնում են Մ-յան խանգարումների:

**ՄԻԶԱԹԹՈՒ**, 2, 6, 8—եռօքսիպուրին, $C_5H_4O_3N_4$, անգույն բյուրեղական նյութ է: Տաքացնելիս քայքայվում է նախքան հալվելը: Վատ է լուծվում ջրում: Հայտնաբերել է Կ. *Շեելեն* մեզում (1776): Գոյություն ունեն կետոնային (I) և էնոլային (II) ձևափոխությունները: Մարդու և կաթնասունների օրգանիզմում պուրինային փոխանակության վերջնական արդյունք է և առաջանում է քսանտինի ֆերմենտային օքսիդացման հետևանքով: Փոքր քանակներով Մ. պարունակվում է հյուսվածքներում (ուղեղ, լյարդ, արյուն), մեզում և քրտինքում: Նյութափոխանակության որոշ խանգարումների դեպքում Մ. և նրա թթու աղերը՝ ուրատները, կուտակվում են օրգանիզմում (երիկամի, միզապարկի քարեր): Մ. հայտնաբերվել է նաև որոշ բույսերում:




**ՄԻԶԱԾՈՐԱՆ** (ureter), երիկամի արտատար ծորան, որով *մեզն* անցնում է *միզապարկ*: Մ. երիկամի ավազանի անմիջական շարունակությունը կազմող խողովակ է, երկարությունը՝ 30—35 *սմ*, արտաքին տրամագիծը՝ 4—7 *մմ*: Գտնվում է որովայնի խոռոչի ետին պատի առաջային երեսին, այնուհետև իջնում է կոնքի խոռոչ ու բացվում միզապարկի մեջ: Մ-ի պատերը կազմված են երեք շերտից. արտաքին՝ շարակցահյուսվածքային, միջին՝ մկանային, և ներքին՝ լորձաթաղանթային: Մկանային շերտի կծկումների շնորհիվ մեզը պարբերաբար անցնում է միզապարկ: Մ-ի հիվանդություններից առավել հաճախ հանդիպում են լորձաթաղանթի բորբոքումը (ուրեթրիտ) և Մ-ի քարը:

**ՄԻԶԱՄՈՒՂ ԴԵՂԱՆՅՈՒԹԵՐ**, դիուրետիկներ, օրգանիզմից *մեզի* հեռացումն արագացնող, հյուսվածքներում և շճային խոռոչներում հեղուկների քանակությունը պակասեցնող միջոցներ: Օրգանիզմից նատրիումի իոնների հեռացումն ուժեղացնող Մ. դ. կոչվում են նատրիուրետիկներ, որոնք օգտագործվում են սիրտ-անոթային համակարգի, լյարդի, երիկամների այտուցներով ուղեկցվող հիվանդությունների դեպքում: Ըստ ազդեցության մեխանիզմների Մ. դ. լինում են՝ երիկամային, որոնք ազդում են ուղղակի երիկամների վրա, չափազանց արդյունավետ են, և արտաերիկամային, որոնց միջամտող ազդեցությունն իրագործվում է օրգանիզմի այլ համակարգերի միջոցով: Երիկամային Մ. դ. են՝ սնդիկային մի շարք պատրաստուկները (մերկուզալ, նովուրիտ), կարբոանհիդրազի ինհիբիտորները (դիակարբ, դիքլորֆենամիդ), որոնք ուժեղացնում են օրգանիզմից բիկարբոնատների հեռացումը, պակասեցնում արյան հիմնային պահեստը և երբեմն հանգեցնում ացիդոզի: Բենզոթիադիազինի ածանցյալները՝ դիքլոթիազիդը (հիպոթիազիդը), ֆուրոսեմիդը (լազիքս), ուրեգիտը, խիստ ուժեղացնում են օրգանիզմից նատրիումի հեռացումը, օժտված են նաև արյան ճնշումն իջեցնող հատկությամբ: Պիրիմիդինի և պտերիդինի ածանցյալները (ալացիլ, տրիամտերեն) ճնշում են նատրիումի և քլորի իոնների խողովակիկային ետներծծումը: Ալդոստերոնի անտագոնիստները՝ սպիրոնոլակտոնը (ալդակտոն, վերոշպիրոն) մեծացնում են նատրիումի, փոքրացնում՝ կալիումի և միզանյութի անջատումը:

Արտաերիկամային Մ. դ. ազդեցության մեխանիզմից կախված լինում են՝ օսմոտիկական (կալիումի ացետատ, մանիթոլ, միզանյութ), որոնք հեռանում են օրգանիզմից, իրենց հետ տանելով ջուր, նատրիում և քլոր իոններ, օգտագործվում են ներգանգային ճնշումն իջեցնելու և գլխուղեղի այտուցները վերացնելու նպատակով, և թթու առաջացնողներ (ամոնիումի քլորիդ, կալցիումի քլորիդ), որոնց ազդեցությունը պայմանավորված է կատիոնների փոխակերպմամբ. օրինակ, ամոնիումի իոնը լյարդում փոխարկվում է միզանյութի, կալցիումի իոնը նստվածք է տալիս աղիքներում՝ ֆոսֆատի կամ կարբոնատի ձևով: Որպես Մ. դ. օգտագործվում են նաև տարբեր բույսերի թուրմը և մզվածքը:

**ՄԻԶԱՆՅՈՒԹ**, կարբամիդ, $H_2NCONH_2$, ածխաթթվի երկամիդը, կարբամինաթթվի ամիդը: Անգույն, անհոտ բյուրեղներ են, հալվում են 132,7°C-ում, լուծվում՝ ջրում, սպիրտում, հեղուկ ամոնիակում և ծծմբական անհիդրիդում: Հայտնաբերել է ֆրանսիացի քիմիկոս Ի. Ռուելը (1773), մեզում, սինթեզել է (ամոնիումի ցիանատից) Ֆ. *Վյոլերը* (1828): Մ. տաքացնելիս քայքայվում է, ջրային լուծույթներում դանդաղ հիդրոլիզվում մինչև $CO_2$ և $NH_3$: Խիստ ռեակցիոնակ է: Թթուների հետ առաջացնում է աղեր (օրինակ, $CO(NH_2)_2HNO_3$), սպիրտների հետ՝ ուրետաններ, բազմաթիվ նյութերի հետ՝ կոմպլեքսային միա-

ցություններ: Կոնդենսանում է մրջնալդեհիդի հետ, ենթարկվում է ալկիլման և ացիլման: Մարդու և ողնաշարավորների մեծ մասի մոտ սպիտակուցային փոխանակության վերջնական արդյունքն է. մասնակցում է օրգանիզմում ջրային ռեժիմի կարգավորմանը: Առաջանում է լյարդում, *սպիտակուցների* քայքայման վերջնանյութերից ($NH_3$ և $CO_2$): Հայտնաբերված է մեզի, արյան, թքի, ավշի, կաթի մեջ և այլ հեղուկներում ու հյուսվածքներում: Առողջ մարդու արյան մեջ Մ-ի պարունակությունը 18—38 *մգ*/100 *մլ* է, մեզում կախված է սննդում սպիտակուցների քանակից և բաղադրությունից: Արտաթորվում է երիկամների և քրտնագեղձերի միջոցով (մարդու օրգանիզմից օրական հեռանում է 25—30 *գ* Մ.); Երիկամների ֆունկցիայի խանգարման և հյուսվածքային սպիտակուցների քայքայումն արագացնող հիվանդությունների դեպքում Մ-ի պարունակությունը արյան մեջ ավելանում է (*ուրեմիա*): Արդյունաբերության մեջ Մ. ստանում են ամոնիակից և ածխաթթու գազից՝ սինթեզով (160—200°C, 100—400 *մթն*): Օգտագործվում է կարբամիդային խեժերի, ներկանյութերի, պարարտանյութերի, ցիանատների, քնաբեր դեղամիջոցների ևն արտադրության համար: Մ. արժեքավոր *ազոտական պարարտանյութ* է (պարունակում է 46% ազոտ): Մ. որպես սպիտակուցների փոխարինող ավելացվում է կերերին, քանի որ որոճողների զանձակում գտնվող մանրէները Մ-ից սինթեզում են սպիտակուց:

**ՄԻԶԱՆՅՈՒԹ-ՄՐՋՆԱԼԴԵՀԻԴԱՅԻՆ ԽԵԺԵՐ**, միզանյութֆորմալդեհիդային խեժեր, արհեստական խեժեր. ստացվում են միզանյութի և մրջնալդեհիդի պոլիկոնդենսմամբ: Ջրալույծ և օրգ. լուծիչներում լուծելի դարձնելու նպատակով խեժը մոդիֆիկացնում են մասնակի էսթերացմամբ: Մոդիֆիկացված Մ. խ. օգտագործում են ամինապլաստների, կարբամիդային սոսինձների ու փրփրապլաստերի արտադրության համար, կարծրությունը, քիմ. կայունությունը և փայլը մեծացնելու, հատկությունները լավացնելու նպատակով ավելացնում են ալկիդային լաքերին և արծնիչներին:

**ՄԻԶԱՆՍՑԵՆ** (< ֆրանս. mise en scène—տեղ բեմում), դրամատիկական երկի որևէ իրադրության տեսանելի իրականացումը բեմական տարածության մեջ դերասանի գրաված դիրքով: Մ. է կոչվում նաև բեմական տեղադրումների և անցումների ամբողջ գումարը՝ զուտ արտաքին իմաստով:
Հ. *Հովհաննիսյան*

**ՄԻԶԱՊԱՐԿ** (vesica urinaria), որոշ անողնաշարավորների, ողնաշարավորների մեծամասնության և մարդու միզային օրգան, ուր հավաքվում է մեզը և պարբերաբար արտահոսում օրգանիզմից (տես *Միզակատություն*): Մարդու Մ-ի միջին տարողությունը 500 *սմ*³ է: Գտնվում է փոքր կոնքի խոռոչում, միջին գծով ցայլային համաձոնից ետ, շագանակագեղձից վեր, սերմնաբշտիկներից, սերմնածորաններից և ուղիղ աղիքից առաջ, իսկ կանանցը՝ միզասեռական ստոծանու վրա, արգանդից և հեշտոցից առաջ: Մ. ձվաձև է, ունի առաջային, ետին և կողմնային աջ ու ձախ երեսներ, գագաթ, մարմին, հատակ և վզիկ, որը դեպի վար աստիճանաբար նեղանում է ու շարունակվում որպես *միզուկ*: Մ-ի պատերը կազմված են երեք շերտից՝ արտաքին՝ շարակցահյուսվածքային, միջին՝ մկանային, և ներքին՝ լորձաթաղանթային: Հիվանդություններից ավելի հաճախ հանդիպում են լորձաթաղանթի բորբոքումը (ցիստիտ), Մ-ի քարերը և պոլիպները:

**ՄԻԶԱՊԱՐԿԻ ԲՈՐԲՈՔՈՒՄ**, ցիստիտ, *միզապարկի* լորձաթաղանթի բորբոքում՝ պայմանավորված վարակի թափանցմամբ: Ըստ ընթացքի լինում է սուր կամ քրոնիկական, ըստ տեղային փոփոխությունների բնույթի՝ կատարային (հասարակ), արյունահոսական ևն: Առավել հաճախ կանանց մոտ հանդիպում է մրսածության հետ կապված սուր բորբոքումը: Ախտանշաններն են՝ որովայնի ստորին հատվածի և սրբոսկրի ցավեր, ցավոտ հաճախամիզություն, վերջում՝ արյան արտազատում: Մեզում հայտնաբերվում են սպիտակուց, լեյկոցիտներ, էրիթրոցիտներ, բակտերիաներ: Հիվանդությունը տևում է 1—2 շաբաթ: Ընթացքը ձգձգվելիս անհրաժեշտ է պարզել պատճառը (շագանակագեղձի ադենոմա, միզապարկի քարեր, արգանդի հիվանդություններ ևն):

Բուժումը. դիետա, անտիբիոտիկներ, սուլֆանիլամիդներ, սպազմոլիտիկ, ցավը հանգստացնող դեղամիջոցներ, ջերմային պրոցեդուրներ, քրոնիկական ընթացքի դեպքում՝ նաև միզապարկի լվացումներ:

**ՄԻԶԱՍԵՌԱԿԱՆ ՀԱՄԱԿԱՐԳ**, մարդու և կենդանիների՝ անատոմիապես և ֆունկցիաներով միմյանց հետ կապված *արտաթորության համակարգի* և *սեռական օրգանների* ամբողջությունը: Անողնաշարավորների արտաթորության և սեռական օրգանների կապն արտահայտվում է տարբեր ձևով: Կարթագլուխների, պրիապուլիդների արտաթորության օրգանները պրոտոնեֆրիդներն են և բացվում են սեռական գեղձերի ծորաններում, բազմախոզան որդերի մեծամասնության, ուստանիների սեռական ծորանները, պահպանելով իրենց հիմնական ֆունկցիան, սերտաճում են արտաթորության օրգանների հետ, որոնցով դուրս են բերվում նաև սեռական արգասիքները: Բազմախոզան որոշ որդերի արտաթորության օրգանները՝ մետանեֆրիդները, կատարում են սեռական արգասիքների արտազատման, իսկ առաջնային սեռական ծորանները (ցելոմոդուկտները)՝ մասամբ արտաթորության ֆունկցիա: Բազմաթիվ փափկամորթների առաջնային սեռական ծորանները գործում են որպես արտաթորման օրգաններ, իսկ սեռական արգասիքները դուրս են բերվում սեռական գեղձերի երկրորդային ծորաններով: Բոլոր ողնաշարավորների, այդ թվում և մարդու, արտաթորության օրգանների ծորանները ծառայում են միաժամանակ սեռական արգասիքների դուրս բերման համար: Կենդանիների էգերի և կանանց սեռական արգասիքները դուրս են բերվում մյուլերյան խողովակից առաջացած ձվատարներով, ձկների մեծամասնության և երկկենցաղների արուների սեռական արգասիքները՝ վոլֆյան խողովակով: Սողունների, թռչունների, կաթնասունների արուների և տղամարդկանց առաջնային երիկամը վերածվում է սերմնարանի (սերմնագեղձերի) հավելվածի, որով դուրս է հոսում սերմնահեղուկը, իսկ արտաթորության ֆունկցիան կատարում են երկրորդային երիկամը և միզածորանը:

**ՄԻԶԱՍԵՌԱԿԱՆ ՕՐԳԱՆՆԵՐ**, միզային (*երիկամներ*, *միզածորան*, *միզապարկ*, *միզուկ*) և *սեռական օրգանների* ամբողջություն, որը կազմում է *միզասեռական համակարգը*:

**ՄԻԶԱՔԱՐԱՅԻՆ ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆ**, ուրոլիթիազ, մարդու և կենդանիների հիվանդություն, որը բնորոշվում է միզուղիներում մեզի բաղադրության մեջ մտնող նյութերից կոնկրեմենտների (քարերի) առաջացմամբ: Մ. հ. տարածված է հատկապես տնտեսապես զարգացած երկրներում և դասվում է քաղաքակիրթ աշխարհին բնորոշ հիվանդությունների շարքը: Գոյություն ունեն քարերի առաջացման մի շարք տեսություններ, որոնցից առավել տարածված են երկուսը. 1. ֆիզիկաքիմիական մատրիցայի տեսության համաձայն քարերը գոյանում են տարբեր աղերով մեզի գերհագեցվածության հետևանքով, որը պայմանավորված է նյութափոխանակության, թթվա-հիմնային հավասարակշռության խանգարմամբ և մեզում պաշտպանական կոլոիդների քանակի նվազմամբ: 2. Օրգ. մատրիցայի տեսությունը կարևոր նշանակություն է տալիս օրգ. մատրիցային (արյան մակարդուկ, ֆիբրին, բջջային դետրիտ, բակտերիաներ), որի շուրջը հետագայում կուտակվում են աղերը: Քարերի առաջացմանը նպաստում են նաև մեզի հոսքի խանգարումները միզուղիների թարախային բորբոքումների դեպքում (տես *Երիկամաբորբ*), ներզատիչ գեղձերի հիվանդությունները (հատկապես հարվահանագեղձի գերֆունկցիան ևն): Կարևոր նշանակություն ունեն ապրելակերպը, սնունդը, հողի, խմելու ջրի առանձնահատկությունները ևն: Ըստ քիմ. բաղադրության միզային քարերը լինում են՝ ուրատային, օքսալատային, ֆոսֆատային, կարբոնատային ևն: Մ. հ-յան կլինիկական ընթացքը կախված է քարերի տեսակից, տեղակայումից, չափերից ևն: Հիմնական ախտանշաններն են՝ միզուղիների տարբեր հատվածների ցավերը, որոնք կարող են լինել բութ տևական կամ սուր նոպայաձև (տես *Խիթ*): Նոպան կարող է տևել ժամեր, օրեր, որի ընթացքում մեզում կարող է հայտնվել արյուն: Երիկամի ավազանի քարը, խցանելով միզածորանի ելքը, առաջացնում է մեզի կուտակում և ավազանի լայնացում (պիելէկտազիա), որը հանգեցնում է *երիկամի ջրակալման*: Քարի առկայությունը նպաստում է միզուղիների լորձաթաղանթի վնասմանը և երիկամի ավազանի միզածորանի և միզապարկի բորբոքային պրոցեսների առաջացմանը: Երիկամի սկահակում բորբոքային պրոցես խորանալիս հանդես են գալիս բուն երիկամի ախտահարմանը բնորոշ ախտանշաններ՝ այտուցներ, զարկերակային արյան ճնշ-

ման բարձրացում, երիկամի ֆունկցիաների անկում են: Ախտորոշումը՝ ռենտգենյան հետազոտությամբ, առանձին (օրինակ, ուրատային քարերի) դեպքերում՝ ավելի բարդ մեթոդների կիրառմամբ: Բուժումը. դեղորայքային, վիրահատական, առողջարանային և դիետային: Մանր քարերը երբեմն հեռանում են ինքնաբերաբար կամ հաջողվում է դրանց դուրս բերել միզուղիները լայնացնելու և մեզի հոսքն ուժեղացնելու միջոցով: Խոշոր քարերը, որոնք առաջացնում են հաճախակի նոպաներ և արգելակում միզարտադրությունը, հեռացվում են վիրահատմամբ: Միզապարկի քարերը հեռացվում են նաև հատուկ գործիքներով մանրացնելու միջոցով: Ներկայումս տարածում է գտել ուրատային քարերի լուծման եղանակը՝ դեղորայքի ընդունմամբ:

*Ա. Միրոյան, Ռ. Մամիկոնյան*

**ՄԻԶՐԻԿ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Սպերի գավառում: 1909-ին ուներ 35 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին, Կամախի կիրճում: Սակավաթիվ փրկվածներ բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՄԻԶՈՒԿ** (urethra), խողովակաձև օրգան, որով *մեզն* արտահոսում է *միզապարկից*: Տղամարդու Մ-ի երկարությունը 18—22 *սմ* է, սկսվում է միզապարկի հատակին գտնըվող Մ-ի ներքին բացվածքով և վերջանում առնանդամի գլխիկի վրա գտնվող արտաքին բացվածքով: Մ-ով արտահոսում է նաև սերմնահեղուկը: Տարբերում են՝ Մ-ի շագանակային, թաղանթային և սպունգային հատվածներ: Շագանակայինը ամենալայն հատվածն է, որի մեջ բացվում են սերմնացայտ և շագանակագեղձի ծորանները: Կանանց Մ-ի երկարությունը 3—5 *սմ* է, սկսվում է միզապարկից ու բացվում հեշտոցի նախադռան մեջ: Միզապարկի մոտ Մ. ունի օղակաձև հարթ մկանաթելերից կազմված ներքին սեղմիչ (սֆինկտեր), որը կծկվելով արգելում է մեզի արտահոսքը: Գործում է անկախ մարդու կամքից. միզապարկը բավականաչափ մեզով լցվելիս, դրա պատերում գտնվող նյարդային վերջույթները գրգռվում են, առաջացնում ռեֆլեկտոր կծկումներ, սեղմիչի թուլացում և մեզի արտահոսք: Մ-ի պատերը կազմված են երկու շերտից. ներքին՝ շարակցաթաղանթային, արտաքին՝ մկանային: Մ-ի բորբոքային պրոցեսները կարող են առաջացնել սպիական նեղացում:

**ՄԻԶՈՒԿԱԲՈՐԲ**, ուրեթրիտ, *միզուկի* լորձաթաղանթի բորբոքում: Առավել հաճախ հանդիպում է տղամարդկանց մոտ: Վարակվում են սեռական ճանապարհով: Ըստ ընթացքի լինում է սուր և քրոնիկական, ըստ պատճառի՝ գոնոռեային, տրիխոմոնադային և ոչ-սպեցիֆիկ: Սուր Մ. սկսվում է վարակումից մի քանի օր (գոնոռեայինը՝ 3—4, տրիխոմոնոզի և ոչ-սպեցիֆիկ Մ-ի դեպքում՝ 5—20) հետո: Ախտանշանները՝ արտադրություն միզուկից և սուր ցավեր՝ միզելիս: Քրոնիկական Մ. առաջանում է սուր Մ-ի անբավարար բուժման հետևանքով: Արտահայտվում է միզուկի ցավերով կամ քորով: Բարդությունները. շագանակագեղձի, մակամորձու բորբոքումներ, միզուկի նեղացում: Մ-ի բնույթը պարզում են միզուկի արտադրության մանրադիտակային քննությամբ և միզուկադիտմամբ: Բուժումը. անտիբիոտիկներ, սուլֆանիլամիդային պատրաստուկներ (տրիխոմոնոզի դեպքում՝ նաև տրիխոպոլ), առատ հեղուկներ, դիետա, միզուկի մեջ դեղորայքի ներարկում: Տես նաև *Սուսանակ*, *Տրիխոմոնոզ*:

**ՄԻԹՉԵԼ** (Mitchell) Էդգար (ծն. 1930), ԱՄՆ-ի տիեզերագնաց-օդաչու, ռազմածովային նավատորմի 1-ին կարգի կապիտան: 1952-ից ծառայում է ԱՄՆ-ի ռազմածովային ուժերում: Ավարտել է Պիտսբուրգի Կարնեգիի անվ. և Մասսաչուսեթսի տեխնոլոգիական ինստ-ները (1964)՝ ստանալով գիտության դոկտորի աստիճան: ԱՄՆ-ի տիեզերագնացների խմբում է 1966-ից: 1971-ի փետր. 1—10-ը, Ա. *Շեփարդի* և Ս. *Ռուսայի* հետ, որպես լուսնախցիկի օդաչու, «Ապոլլոն-14» տիեզերանավով թռիչք է կատարել դեպի Լուսին: Լուսնի վրա մնացել է 33 *ժ* 30 *ր* (երկու անգամ դուրս եկել Լուսնի մակերևույթ՝ 4-ական *ժ*-ով):

**ՄԻԹՐԱՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, տես *Միհրականություն*:

**ՄԻԹՐԱՈՒՍՏԵՍ**, Միթրավստես (ծն. և մահ. թթ. անհտ.), Փոքր Հայքի զորքերի առաջնորդ, ապա՝ թագավոր մ. թ. ա. IV դ. վերջին քառորդին: Անտիկ պատմիչներ Արրիանոսը և Կուրտիոս Ռուփոսը վկայում են, որ Գավգամելայում (տես *Գավգամելայի ճակատամարտ մ. թ. ա. 331*) Մ-ի զորքերը Ալեքսանդր Մակեդոնացու զորքի դեմ կռվել են Աքեմենյան Պարսկաստանի բանակի ձախ թևում: Դարեհ III Կոդոմանոսի պարտությունից հետո Մ. վերադարձել է Փոքր Հայք և այն հռչակել անկախ թագավորություն:

**ՄԻԼ** (Mill) Ջոն Ստյուարտ (1806—1873), անգլիացի պոզիտիվիստ-փիլիսոփա, տրամաբան, տնտեսագետ և հասարակական գործիչ: 1823—58-ին ծառայել է Արևելա-հնդկական ընկերությունում, 1865—1868-ին եղել Համայնքների պալատի անդամ: Մ-ի աշխարհայացքը ձևավորվել է Ի. Բենտամի ուտիլիտարիզմի, Ջ. Բերկլիի, Դ. Հյումի փիլիսոփայության և Դ. Հարթլիի, Ջեյմս Միլի զուգորդական հոգեբանության ազդեցությամբ: Մ-ի փիլ. ըմբռնումները շարադրված են «Սըր Ու. Համիլտոնի փիլիսոփայության ուսումնասիրությունը» երկում (1865), ուր ֆենոմենալիստական պոզիտիվիզմի դիրքերից հակադրվում է անգլ. ապրիորիստներին, գիտելիքի հիմքը համարում փորձը, որն ըմբռնում էր իդեալիստորեն: Մատերիան, ըստ Մ-ի, զգայությունների մշտական հնարավորություն է լոկ, իսկ գիտակցությունը՝ դրանք վերապրելու հնարավորություն: Տրամաբանական երկերում [«Տրամաբանության համակարգը» (հ. 1—2, 1843) ևն] տվել է տրամաբանության ինդուկտիվիստական մեկնաբանությունը: Այս ծայրահեղությունը քննադատել է Ֆ. Էնգելսը: Մ. մանրակրկիտ մշակել է պատճառական կապերի հետազոտման մեթոդները (հայտնի են «Մ-ի մեթոդներ» անունով), տվել դրանց ձևակերպումները: Բարոյագիտության բնագավառում զարգացրել է ուտիլիտարիզմի սկզբունքները («Ուտիլիտարիանիզմ», 1863): «Քաղաքատնտեսության սկզբունքներ...» (հ. 1—2, 1848) աշխատության մեջ Մ. ձգտել է տալ ժամանակի բուրժ. դասական քաղաքատնտեսության գաղափարների համակարգված շարադրանքը: Մ. կապիտալիզմի հակասությունների վերացման ուղին համարել է սոցիալական բարենորոգումները, արժեքի աշխատանքային ուսմունքը շփոթել արտադրության ծախքերի տեսության հետ: Ձգտելով խուսափել բուրժ. դասական քաղաքատնտեսությանը բնորոշ հակասություններից՝ այն էկլեկտիկորեն միավորել է Թ. Մալթուսի և ուրիշների գռեհիկ տեսությունների հետ: Մ-ի հայացքները Կ. Մարքսը քննադատել է «Կապիտալ»-ում և այլ աշխատություններում: Հայերեն է թարգմանվել Մ-ի «Ազատության մասին» աշխատությունը (1898):

*Գրկ.* Трахтенберг О. В., Очерки по истории философии и социологии Англии XIX в., М., 1959.

**ՄԻԼԱԿԵՐՏ**, գյուղ Իրանում, Սպահանի նահանգի Փերիա գավառի Գորջի գավառակում: Հիմնել են Քյարվանդ և Փերիա գավառների գյուղացիները, 1650-ական թթ.: Առաջին անգամ հիշատակվում է մի Ավետարանի (պահվում է մոտակա Շուրիշկան գյուղում) 1658-ի հիշատակարանում: 1970-ին ուներ 91 տուն (672 շունչ) հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ: Կա եկեղեցի (Ս. Աստվածածին), ուր պահվում են 3 ձեռագիր ավետարաններ: 1875-ից եկեղեցուն կից բացվել է դպրոց, որն այժմ պետականացվել է: Գործում է գրադարան: Գյուղն ունի 4 ջրաղաց:

*Գրկ.* Մինասյան Լ., Պատմություն Փերիայի հայերի, Անթիլիաս, 1971:

**ՄԻԼԱՆ** (Milano), քաղաք Հյուսիսային Իտալիայում, Պադանի հարթավայրում: Միլանի պրովինցիայի և Լոմբարդիայի մարզի վարչական, երկրի տնտ. ու մշակութային խոշորագույն կենտրոնն է: Բնակչության թվով (1,7 մլն, արվարձաններով՝ 4 մլն, 1978) երկրորդն է Հռոմից հետո: Գտնվում է Ալպերի լեռնանցքներից տանող երկաթուղային և ավտոմոբիլային ճանապարհների խաչմերուկում: Նավարկելի ջրանցքներով կապված է Պո գետի հետ, միջազգային նշանակություն ունեցող օդային հաղորդակցությունների հանգույց է: Առաջատար ճյուղերն են մեքենաշինությունը (այդ թվում՝ ավտոմոբիլներ, հաստոցներ, էլեկտրատեխնիկական սարքավորումներ), մետալուրգիական, նավթավերամշակման, քիմ., կաշվի-կոշիկի, պոլիգրաֆիական արդյունաբերությունը: Մ-ում են աշխարհագրական ամսագրեր, ուղեցույցներ, քարտեզներ, ատլասներ ու տարեգրքեր հրատարակող «Թուրինգ կլուբ Իտալյանո» հրատարակչությունը, երկրի առաջատար մոնոպոլիաների վարչությունները, բազմաթիվ բանկեր ու առևտրական բորսաներ, մի շարք ուս. հաստատություններ (այդ


Միլանի Կաթողիկե տաճարը (1386—1856, ճարտ-ներ՝ Սիմոն Օրսենիգո, Ջ. Ա. Ամադեո, Կ. Սոլարի, Պ. Տիբալդի և ուրիշներ)

թվում՝ համալսարան), Ազգային գրադարան, գիտական հիմնարկներ, *«Լա Սկալա»* օպերային թատրոնը:

Մ. հիմնադրվել է մ. թ. ա. V դ. վերջին կամ IV դ. սկզբին: Մ. թ. ա. 196-ից եղել է Հռոմի իշխանության տակ (լատ. անվանումը՝ Mediolanum): 801-ից Լանգոբարդների կոմսության մայրաքաղաքն էր: X դ. վերջից՝ արքեպիսկոպոսության կենտրոն: XI դ. վերջին Մ-ում հաստատվել է կոմունա: 1395-ից դարձել է Մ-ի դքսության (Վիսկոնտիների գլխավորությամբ) մայրաքաղաքը: 1450—1535-ին (ընդհատումներով) գտնվել է Սֆորցա տոհմի, 1535—1706-ին՝ Իսպանիայի, 1706—96-ին՝


Պիրելլի երկնաքերը Միլանում

Ավստրիայի տիրապետության տակ: 1796-ին Մ. զավթել են Նապոլեոն I-ի զորքերը: 1797-ից Այսրալպյան Հանրապետության, 1802-ից՝ Իտալական Հանրապետության, 1805-ից՝ Իտալական թագավորության մայրաքաղաքն էր: 1815—1859-ին դարձյալ Ավստրիայի տիրապետության տակ էր: Ավստրո-իտալա-ֆրանսիական պատերազմի հետևանքով 1859-ին ազատագրվել է ավստ. լծից և ամբողջ Լոմբարդիայի հետ մտել Սարդինիայի թագավորության կազմի մեջ (1861-ից՝ Միասնական Իտալական թագավորության): 1882-ին Մ-ում հիմնվել է Իտալական բանվորական կուսակցությունը: Երկրորդ համաշխարհային պատերազմի (1939—45) տարիներին Մ. իտալ. և 1943-ին Իտալիան զավթած գերմ. ֆաշիստների դեմ ազատագրական, հակաֆաշիստական պայքարի գլխավոր կենտրոններից էր (Մ-ում էր գտնվում Հյուսիսային Իտալիայի ազատագրության ազգային կոմիտեն): Ազատագրվել է 1945-ի ապրիլի 26-ին:

Մ. վաղ քրիստոնեական և ռոմանական ճարտ-յան կենտրոններից է (Սան Լորենցո Մաջորե, 350, Սանտ Ամբրոջո, 386, բազարանատիպ Սան Սատիրո, 868—888, եկեղեցիները են): Միջնադարից և Վերածննդի ժամանակաշրջանից պահպանված հուշարձաններից են Պալացցո դելլա Ռաջոնեն (1223—38), գոթական տաճարը (սկսվել է 1386-ին), Կաստելլո Սֆորցեսկոն (սկսվել է 1450-ին), Հոսպեդալե Մաջորեն (սկսվել է 1456-ին), Սանտա Մարիա պրեսսո Սան Սատիրո (1479—83, ճարտ. Բրամանտե), Սանտա Մարիա դելլե Գրացիե (1466—97, ճարտ-ներ՝ Գ. Սոլարի և Բրամանտե, սեղանատանը Լեոնարդո դա Վինչիի «Խորհրդավոր ընթրիք» որմնանկարն է) եկեղեցիները են: Մեծ թվով կառույցներ են պահպանվել բարոկկո, ռոկոկո և կլասիցիզմի («Լա Սկալա» օպերային թատրոնի շենքը, 1778, պալացցո Բելջոյոզո, 1773—81) ոճերով: 1953-ին հաստատված գլխավոր հատակագծի համաձայն, կառուցվել են բնակելի նոր թաղամասեր (հիմնականում Մ-ի hu-ում), նոր հասարակական կենտրոն, որի ճարտ. հորինվածքում իշխում են երկնաքերները (Պիրելլի վարչական շենքը, 1956—60, ճարտ-ներ՝ Ջ. Պոնտի և Ա. Ռոսելլի, ինժեներ՝ Պ. Լ. Ներվի):

Հ ա յ ե ր ը Մ ի լ ա ն ու մ: Հայտնի է, որ Իտալիայում համեմատաբար կայուն հայ համայնքներ կազմավորվել են XII դ.: Մ-ում հայերի առկայության մասին հիշատակություն կա XI դարից: 1342—1650-ին Մ-ում գործել է հայ հոգևորականների Բարսեղյան միաբանությունը: 1609-ին կարդինալ Ֆ. Բոռոմեոն Մ-ում հիմնել է Ամբրոսյան գրադարանը, որի աշխատակից Ֆրանչեսկո Ռիվոլան 1612-ին Վենետիկում հայերենի դասեր է առել Աբգար դպիր Եվդոկացու մոտ, այնուհետև Աբգար դպիրը հրավիրվել է Մ. հայերեն դասավանդելու (նրան հաջորդել է Պետրոս Պողոս Կոպոսը, որը 1615-ին հայերեն ձեռագիր է ընդօրինակել): Ամբրոսյան գրադարանին կից հիմնվել է հայկ. տպարան, որի առաջին գիրքն է եղել 1621-ին տպագրված Ֆ. Ռիվոլայի հայերեն-լատիներեն բառարանը:

1925—32-ին Մ-ում է գործել Մխիթարյանների հովանավորած Ֆիեսսո դ'Արտիկո որբանոց-վարժարանը, ուր հավաքված էին Մեծ եղեռնից փրկված հայ որբերը (սաներից հայտնի են նկարիչներ Զարեհ Մութաֆյանը, Արտաշես Գարիպյանը և ուրիշներ): Մ-ի համայնքը ղեկավարում է «Իտալիայի հայոց միությունը», որի կանոնադրությունը վավերացրել է Իտալիայի կառավարությունը՝ 1955-ին: 1968-ին Մ-ի պոլիտեխնիկական ինստ-ում հիմնվել է Հայկ. միջնադարյան ճարտ-յան ուսումնասիրության կենտրոն: Մ-ում է հրատարակվում «Հայ ճարտարապետության վավերագրեր» մատենաշարը: Կենտրոնի և «Իտալիայի հայ մշակութային միության» ջանքերով Մ-ում (նաև Վենետիկում, Թուրինում, Բերգամոյում, Փարիզում, Վիեննայում, Մյունխենում, Լիսաբոնում, Բուենոս Այրեսում) կազմակերպվել է հայ ճարտ-յան ցուցահանդես, իսկ 1975-ին՝ Կենտրոնի և Մ-ի համայնքի աջակցությամբ՝ Հայ մշակույթի I սիմպոզիումը Բերգամոյում (Իտալիա): Հայ արվեստն ու մշակույթն ավելի լայնորեն ուսումնասիրելու նպատակով 1978-ին հիմնվել է Մ-ի Հայ մշակույթի ուսումնասիրության և վավերագրումի կենտրոն: Տես նաև *Իտալիա*, Հ ա յ ե ր ը Ի տ ա լ ի ա յ ու մ մասը: *Լ. Զեքիյան*

*Գրկ.* Z e k i y a n L., Nouveau matériaux à propos des présences arméniennes en Italie, Yerevan, 1978.

**ՄԻԼԱՆԻ ԷԴԻԿՏ 313** (Edictum Mediolani), հրովարտակ, որ Եվսեբիոս Կեսարացու «Եկեղեցու պատմության» համաձայն, 313-ի փետրվարին հրապարակել են հռոմ. կայսր Կոստանդին Մեծն ու Լիկինիոսը: Մ. է-ով դադարեցվում էր քրիստոնյաների հալածանքը, քրիստոնեությունը համարվում էր կայսրությունում թույլատրելի կրոններից մեկը, ազատ էին արձակվում աքսորված և բանտարկված քրիստոնյաները են: *Հ. Բարթիկյան*

**ՄԻԼԱՆՈՎԱ** (Milanov) Զինկա (ծն. 1906, Զագրեբ), հարավսլավացի երգչուհի (սոպրանո): Ելույթներ է ունեցել 6 տարեկանից: 1921—26-ին երգեցողություն է սովորել Զագրեբի երաժշտական ակադեմիայում: 1928—36-ին եղել է Զագրեբի օպերային թատրոնի մեներգչուհի: 1936—1937-ին հյուրախաղերով հանդես է եկել Վիեննայում, Պրագայում, Դրեզդենում, Համբուրգում, Զալցբուրգյան փառատոնում (Ա. Տոսկանինիի ղեկավարությամբ): 1937-ից երգել է Նյու Յորքի «Մետրոպոլիտեն-օպերայում»: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո վերադարձել է հայրենիք: Վերդիի օպերաներում («Աիդա», «Ռիգոլետտո», «Տրուբադուր», «Տրավիատա», «Օթելլո») կանանց դերերգերի լավագույն կատարողներից է: Մ-ի բարձրարվեստ կատարումներից է նաև Նորման (Բելլինիի «Նորմա»):

**ՄԻԼԴՅՈՒ**, բույսերի կեղծ ալրացողային հիվանդություն: Սովետական գրականության մեջ Մ. սովորաբար անվանվում է միայն խաղողի վազի կեղծ *ալրացողը*: Ունի ամերիկյան ծագում: Եվրոպայում առաջին անգամ նկատվել է 1878-ին (Ֆրանսիայում): ՍՍՀՄ-ում տարածված է խաղողագործական բոլոր շրջաններում, բացառությամբ Միջին Ասիայի:

Հիվանդության հարուցիչը Plasmopara viticola Berl. et de Toni մակաբույծ սունկն է: Ձմեռում է գլխավորապես վարակված, թափված տերևների մեջ, կլորավուն թաղանթապատված օոսպորների (հանգստի սպորներ) ձևով: Գարնանը, թափված տերևների փտելու ժամանակ, օոսպորները հողի մեջ 11°C-ից բարձր ու բավարար խոնավության պայմաններում ծլում են, առաջացնելով հիֆեր, որոնց զագաթներում գոյանում են մակրոկոնիդիումներ: Վերջիններս քամու միջոցով տարածվում են տերևների վրա: Դրանց մեջ առաջանում են զոոսպորներ (շարժուն սպորներ), որոնք տերևի վրա խոնավության առկայության պայմաններում ծլում են: Առաջացած հիֆերը հերձանցքերից թափանցում են տերևների մեջ, ուր զարգանում է սնկի միցելիումը: Հիվանդ տերևների հյուսվածքներն սկսում են մահանալ, առաջանում են դեղնավուն բծեր, իսկ ստորին երեսի վրա՝ սնկի ամառային սպորակիր-

ներ (զոոսպորանգիումներով կոնիդիումներ), որոնց միջից զոոսպորները դուրս գալով նորից են վարակում:

Մ. վնասում է խաղողի վազի բոլոր կանաչ օրգանները (տերևները, ծաղկաբույլերը, պտուղները, բեղիկները ևն): Վնասված հյուսվածքները 10—15 օր հետո գորշանում և չորանում են: Մ-ի զարգացմանը նպաստում են տեղումները, ցողը, մառախուղը, բարձր ջերմաստիճանը, իսկ Կոնիդիալ սպորատվությանը՝ օդի բարձր խոնավությունը (95—100%): Չոր և շոգ եղանակին Մ-ի զարգացումն ընդհատվում է:

Պ ա յ ք ա ր ի մ ի ջ ո ց ն ե ր. միկյուդիմացկուն սորտերի ներդրում, վազի ժամանակին ծերատում ու բջատում, թափված տերևների ոչնչացում, վեգետացիայի ընթացքում միջշարքերի փխրեցում և այգիների սրսկում (4—5 անգամ) բորդոյան հեղուկի 1% կամ ցինկի 0,5%, կուպրոզանի 0,4%-անոց լուծույթներով:

Մ-ին Արարատյան դաշտում այգեգործներն անվանում են «չոռ», հս-արլ. շրջաններում՝ «կարմրուկ», իսկ Մեղրիում, Գորիսում՝ «խորշակ»:

*Պ. Սեդրակյան*

**ՄԻԼԵԹՅԱՆ ԴՊՐՈՑ,** մ ի լ ե տ յ ա ն դ պ ր ո ց, հին հունական պարզունակ մատերիալիստական դպրոց: Ձևավորվել է *Միլետ* քաղաքում, մ. թ. ա. VI դ.: Հակադրվելով կրոնա-առասպելական մտածողությանը, Մ. դ-ի ներկայացուցիչները՝ *Թալեսը, Անաքսիմանդրոսը, Անաքսիմենեսը*, աշխարհը բացատրում էին հենց իրենով: Բնության նախահիմք էին համարում որևէ կոնկրետ նյութական գոյ (ջուր, *ապեյրոն*, օդ), իսկ որակական բազմազանությունը հանգեցնում այդ նախահիմքի տարբեր դրսևորումներին: Միլետցիների հայացքներում արտահայտվել են հակադրությունների, քանակական փոփոխություններից նոր որակի անցման, անհրաժեշտության, համընդհանուր օրինաչափության մասին գաղափարներ: Մ. դ. ներառվում է *Հոնիայում* ձևավորված հ ո ն ի ա կ ա ն դ պ ր ո ց ի մեջ՝ նկատի ունենալով միլետցիների և *Հերակլիտ* Եփեսացու փիլիսոփայությունը որպես մեկ ամբողջական ուղղություն:

Մ. դ-ի ուսմունքին V դարից սկսած անդրադարձել են հայ մտածողները, շեշտելով նյութական սուբստանցի մշտական գոյության մասին դրույթը, որը կրոնաիդեալիստական դիրքերից քննադատել են Եզնիկն, Հովհաննես Իմաստասերը, Հովհաննես Երզնկացին, Հովհան Որոտնեցին, Գրիգոր Տաթևացին և ուրիշներ:

*Գ. Գրիգորյան*

**ՄԻԼԵՎ** Գեո (իսկականը՝ Գեորգի Միլև Կ ա ս ա ր ո վ, 1895—1925), բուլղար բանաստեղծ: Սովորել է Սոֆիայի (1911—12) և Լայպցիգի (1912—14) համալսարաններում: Հրատարակել է «Վեզնի» («Կշեռք», 1919—22) գրական ամսագիրը, այնուհետև՝ «Պլամկ» («Բոց», 1924—25) հակաֆաշիստական ամսագիրը՝ պրոպագանդելով մարքսիզմը, պաշտպանելով ռեալիստական ավանդույթները: Մ-ի գլխավոր ստեղծագործությունը «Սեպտեմբեր» (1924, հայ հրտ. 1930) հերոսա-ռոմանտիկական պոեմն է, որը պատկերում է ժող. վերելքը և 1923-ի Սեպտեմբերյան հակաֆաշիստական ապստամբության ճնշման ողբերգական դրվագները: Զոհվել է ֆաշիստական գնդանում:

**ՄԻԼԵՎՍԿԻ** (Milewski) Թադեուշ [17.5. 1906, Կոլոմիա (այժմ՝ ՈւՍՍՀ-ում)—5.3. 1966, Կրակով], լեհ լեզվաբան: Լեհական ԳԱ թղթակից անդամ (1949): Ավարտել է Լվովի համալսարանը (1929): Յագելոնյան համալսարանի պրոֆեսոր (1954): Մ-ու աշխատանքները վերաբերում են սլավոնագիտության, հնչույթաբանության, հնդեվրոպական լեզվաբանության (հատկապես՝ խեթագիտության), ոճագիտության բնագավառներին: Հայտնի են նրա տիպաբանական հետազոտությունները (շուրջ 150 լեզուների նյութի վրա), ուր անդրադառնում է նաև հայերենի երևույթներին:

*Ա. Սարգսյան*

**ՄԻԼԵՏ** (Μίλητος), Մ ի լ ե թ, հնագույն քաղաք *Հոնիայում*, Մեանդրոսի (այժմ՝ Մեծ Մենդերես, Թուրքիայում) գետաբերանի շրջանում: Մ. թ. ա. XVI դարից Մ-ում բնակվել են հույներ: Մ. թ. ա. XIV դ. աքայական խոշոր, ամրացված քաղաք էր: Մ. թ. ա. XI—X դդ. Մ-ում վերաբնակվել են հոն. նոր ցեղեր՝ հոնիացիները: «Իլիական»-ում Մ. անվանվում է կարիացիների քաղաք: Մ. թ. ա. VIII—VI դդ. եղել է առևտրական, արհեստագործական և մշակութային զարգացած պոլիս, հիմնել է բազմաթիվ գաղութներ (Կյուզիկոս, Սինոպե, Պոնտիկապեոն, Թեոդոսիա ևն): Մ. թ. ա. VII դ. կեսին Մ. ընդունել է լիդիացիների գերիշխանությունը՝ պահպանելով ներքին ինքնավարություն: Մ. տնտ. և քաղ. ծաղկում է ապրել տիրանոս Թրասիբուլոսի (մ. թ. ա. մոտ 610—600) ժամանակ: Մ. թ. ա. VI դ. Մ-ում առաջացել է *միլեթյան դպրոցը*: Մ. թ. ա. VI դ. կեսին ընկել է պարսկ. լծի տակ: Մ. թ. ա. 500-ին գլխավորել է Հոնիայի քաղաքների ապստամբությունը Պարսկաստանի դեմ, որով ըսկըսվել են հույն-պարսկական պատերազմները: 494-ին պարսիկներն ավերել են քաղաքը: 479-ից սկսվել է Մ-ի վերականգնումը, 478-ին մտել է Աթենական 1-ին ծովային միության մեջ: Պելոպոնեսյան պատերազմից (մ. թ. ա. 431—404) հետո դարձյալ ընկել է պարսկ. լծի տակ: 334-ին նվաճել է Ալեքսանդր Մակեդոնացին, 129-ին՝ Հռոմը: Պահպանվել են Մ-ի ավերակները: XX դ. սկզբից կատարվում են պեղումներ:

*Գրկ.* Кобылина М. М., Милет, М., 1965.

**ՄԻԼԵՐԱՆ** (Millerand) Ալեքսանդր (1859—1943), ֆրանսիական պետական և քաղաքական գործիչ: Մասնագիտությամբ՝ փաստաբան: Քաղ. գործունեությունն սկսել է որպես բուրժ. ռադիկալ: Համբավ է ձեռք բերել 1880-ական թթ. դատավարություններում՝ գործադուլավոր բանվորների պաշտպանությամբ: 1890-ական թթ. սկզբից հարել է սոցիալիստական շարժմանը՝ ունենալով աջ կողմնորոշում. կողմ էր բարեփոխումների քաղաքականությանը: 1899-ին որպես առևտրի և արդյունաբերության մինիստր մտել է Վալդեկ Ռուսոյի կառավարության կազմի մեջ. պատմության մեջ առաջին դեպքը, երբ սոցիալիստը դարձել է բուրժ. կառավարության անդամ (այստեղից էլ՝ միլերանիզմ արտահայտությունը, որ նշանակում է բուրժուազիայի հետ սոցիալիստական կուսակցության քաղ. համագործակցության ձև): 1904-ին վտարվել է ֆրանս. սոցիալիստական կուսակցությունից: Եղել է հասարակական աշխատանքների և ռազմ. մինիստր, 1920-ին՝ Մինիստրների խորհրդի նախագահ և արտաքին գործերի մինիստր, հակասովետական ինտերվենցիայի ակտիվ կազմակերպիչներից: 1920-ի սեպտեմբերին ընտրվել է Ֆրանսիայի պրեզիդենտ: 1924-ին, պառլամենտական ընտրություններում ձախ բուրժ. կուսակցությունների հաղթանակից հետո, հարկադրված հեռացել է պաշտոնից և այլևս ակտիվ դեր չի խաղացել երկրի քաղ. կյանքում:

**ՄԻԼԵՐՅԱՆ** Եվգենի Ալեքսանդրի (ծն. 19.5. 1913, Փոթի), հայ սովետական հոգեբան, հոգեբանական գիտ. դ-ր (1968), պրոֆեսոր (1969): Ավարտել է Սումիի (ՈՒՍՍՀ) մանկավարժական ինստ-ը: Աշխատել է Կիևի Հոգեբանության ԳՀԻ-ում նախ՝ գիտաշխատող, ապա՝ աշխատանքային հոգեբանության սեկտորի վարիչ: 1975-ից Խ. Աբովյանի անվ. հայկական մանկավարժական ինստ-ի հոգեբանության պրոբլեմային լաբորատորիայի աշխատանքային հոգեբանության և պրոֆտեխ. կրթության սեկտորի վարիչն է: Հետազոտությունները վերաբերում են աշխատանքային հոգեբանության և պրոֆտեխ. կրթության հարցերին: Մ. ստեղծել է մի շարք սարքեր ու մեխանիզմներ, որոնք կիրառվում են նյարդային գործունեության անհատական առանձնահատկությունների, ուշադրության (ատենցիոմետր), հուզական-կամային գծերի (էմոկորդինոմետր, վոլյունտոգրաֆ) և այլ պարամետրերի չափման համար: Մ. հեղինակ է նաև մի շարք գյուտերի («Օպտիկական զգայությունների ցուցադրման սարք», «Վարորդների մասնագիտական պիտանիության ստուգման սարք» ևն):

*Երկ.* Психология формирования общетрудовых политехнических умений, М., 1973.

**ՄԻԼԹՈՆ** (Milton) Ջոն (1608—1674), անգլիացի բանաստեղծ, քաղաքական գործիչ, մտածող: Ավարտել է Քեմբրիջի համալսարանը (1632): Դեռ վաղ շրջանի ստեղծագործություններում (փիլ. բնույթի երկեր, անգլ. և լատ. բանաստեղծություններ) զգացվում է, որ Մ. ծանոթ է Ֆ. Բեկոնի և ուրիշների փիլ-յանը և մոտիկ է պուրիտանական պոեզիային: 1638-ին հրատարակել է «Լյուսիդաս» եղերերգը, որը լի է Անգլիայի կրոնա-քաղաքական պայքարին վերաբերող ակնարկներով: XVII դ. *Անգլիական բուրժուական հեղափոխության* շրջանում Մ. ականավոր հրապարակախոս էր, *ինդեպենդենտների* կողմնակից: «Արեոպագիտիկա» (1644) պամֆլետում պաշտպանել է մամուլի ազատությունը: «Պատկերամարտիկ» (1649) գրքում արդարացրել է Կարլոս I թագավորի գլխատումը՝ որպես բռնապետի, մարդասպանի և անգլ. պետության թշնամու: «Ի պաշտպանություն անգլիական ժողովրդի» (1650, 1654) երկու պամֆլետում Մ. հանդես է եկել իբրև հետևողական հակաբռնապետական և հանրապետական: «Լատինական քարտուղարի» պաշտոնում



Ջ. Միլթոն

եղած տարիներին (1649—52) վարել է միջազգային պետ. գրագրություն, աշխատակցել է «Մերկուրիուս պոլիտիկուս» («Mercurius Politicus») կիսապաշտոնական հանդեսին: 1659—60-ի պամֆլետներում Մ. նախազգուշացրել է, որ Ռեստավրացիայի հաղթանակը կհանգեցնի բռնապետության վերականգնման: Այդ շրջանին են պատկանում սաղմոսների և սոնետների նրա թարգմանությունները: Ստյուարտների վերականգնումից (1660) հետո Մ-ի «Պատկերամարտիկը» և «Ի պաշտպանություն անգլիական ժողովրդի» երկու պամֆլետը հրապարակայնորեն այրվեցին: Բանտից ու մահապատժից խույս տալով՝ Մ. վարեց մեկուսացած կյանք: Նրա թշվառ վիճակն ավելի ծանրացրեց կուրացումը: Այդ շրջանում նա ստեղծեց «Դրախտ կորուսյալ» (1667, հայ. հրտ. 1824) և «Դրախտ վերադարձյալ» (1671), ինչպես նաև «Բրիտանիայի պատմությունը» (հրտ. 1670) պոեմները: Մ. ստեղծագործական ուղին ավարտեց «Սամսոն մարտիկ» (1671, հայ. հրտ. «Սամփսոն Ագոնիստես», 1926) փայլուն ողբերգությամբ, որը փառաբանում է բռնակալությանը ցույց տրվող ժող. դիմադրության անսպառ ուժերը: Մ-ի ազդեցությունը եվրոպական պոեզիայի զարգացման վրա զգացվել է ընդհուպ մինչև XIX դ. 30-ական թթ.:

*Գրկ.* Առաքելյան Հ., Միլտոն. Նրա կյանքը և գրական գործունեությունը, Թ., 1950: *Ա. Գասպարյան*

**ՄԻԼԻ**... (< լատ. mille — հազար), ելակետային միավորից հազար անգամ փոքր միավորի անվանումը կազմելու համար գործածվող նախածանց: Կրճատ նշանակվում է *մ* (միջազգային նշանակումը՝ m): Օրինակ, 1 *մմ* (միլիմետր)= $10^{-3}$ *մ*:

**ՄԻԼԻ ՀԱՐԹԱՎԱՅՐ**, Միլի տափաստան, Կուր-Արաքսյան դաշտավայրի մասը Կուրի աջ ափին, Արաքսի ստորին հոսանքից արևմուտք, Ադրբեջանական ՍՍՀ-ում: Կիսաանապատային հարթավայր է, արմ-ում բարձրադիր, մասնատված չոր հեղեղատներով, հս-արլ-ում՝ օվկիանոսի մակարդակից ցածր: Կլիման չորային է, շոգ ամառով, տարեկան մոտ 300 *մմ* տեղումներով: Հողերը գորշդարչնագույն են, գորշ, գորշ մարգագետնային, տեղ-տեղ՝ աղակալած, անապատային: Բուսականությունը կիսաանապատային է, տափաստանային: Ոռոգելի հողագործության և անասնապահության շրջան է:

**ՄԻԼԻԱՐԴ**, հազար միլիոն, միավորով և 9 զրոյով պատկերվող թիվ, այսինքն՝ $10^9$:

**ՄԻԼԻԿԵՆ** (Millikan) Ռոբերտ Էնդրյու (1868—1953), ամերիկացի ֆիզիկոս: Ավարտել է Օբեռլինի կոլեջը (Օհայո) 1891-ին: Կոլումբիայի համալսարանում ստացել է դոկտորի աստիճան (1895): 1895—96-ին աշխատել է Բեռլինի և Գյոթինգենի, 1896-ից՝ Չիկագոյի համալսարաններում: Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին (1914—18) եղել է Ազգային հետազոտական խորհրդի նախագահի տեղակալը (մշակել է սուզանավերի հայտնաբերման և օդերևութաբանական սարքեր): 1921—45-ին եղել է Կալիֆոռնիայի տեխնոլոգիական ինստ-ի Նորման Բրիջի լաբորատորիայի դիրեկտորը: Իր մշակած մեթոդով ճշգրիտ չափել է էլեկտրոնի լիցքը: Փորձով ստուգել է Էյնշտեյնի ֆոտոէֆեկտի հավասարումը. առաջինը որոշել *Պլանկի հաստատունի* թվային արժեքը (1912—15): Մշակել է հեռավոր ուլտրամանուշակագույն տիրույթի ատոմային սպեկտրոսկոպիայի մեթոդիկան: Իոնացման խցիկով հետազոտել է տիեզերական ճառագայթները: Արժանացել է Նոբելյան մրցանակի (1923):

**ՄԻԼԻՄԵՏՐԱԿԱՆ ԱԼԻՔՆԵՐ**, 1—10 *մմ* ալիքի երկարության էլեկտրամագնիսական տատանումներ: Կրող մեծ հաճախականության (30—300 *Գհց*) շնորհիվ Մ. ա-ի օգտագործումը հնարավորություն է տալիս խիստ մեծացնել հաղորդման ինֆորմացիոն տարողությունը: Մ. ա-ի ուղղագիծ տարածման պատճառով նրանցով *ռադիոկապ* կարելի է ապահովել միայն ուղիղ տեսանելիության սահմաններում: Մ. ա-ով մեծ տարածությունների վրա կայուն կապ ապահովելու համար օգտվում են ռադիոռելեային գծերով հաղորդման սկզբունքից: Մթնոլորտի բացասական ազդեցությունը ալիքների տարածման վրա վերացնելու համար կարելի է Մ. ա. հաղորդել չոր ազոտով լցված մետաղական խողովակներով՝ *ալիքատարներով*, քանի որ ազոտը, ի տարբերություն թթվածնի և ջրային գոլորշիների, Մ. ա. չի կլանում: Մարումը չափազանց փոքր է լինում (1 *դբ/կմ*), երբ Մ. ա. հաղորդվում են պարուրաձև ալիքատարներով՝ $TE_{01}$ տիպի ալիքով: Մ. ա-ի կարևոր առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ համեմատաբար փոքր չափերի անտեննայով հնարավոր է ճառագայթումը կենտրոնացնել շատ նեղ փնջում և զգալի մեծացնել ուղղորդվածությունը: Այս սկզբունքով կառուցված ռադիոլոկատորները կարող են հայտնաբերել փոքր չափերի օբյեկտներ և որոշել նրանց տարածական կոորդինատները: Մ. ա. օգտագործվում են ոչ միայն ռադիոտեխնիկական նպատակներով, այլև ֆիզիկայի ու տեխնիկայի տարբեր բնագավառներում, ինչպես նաև աստղագիտության, բժշկության մեջ:

*Գրկ.* Миллиметровые и субмиллиметровые волны. Под ред. Р. Г. Мириманова, М., 1959. *Ժ. Հովսեփյան*

**ՄԻԼԻՈՆ**, հազար հազար, միավորով և 6 զրոյով պատկերվող թիվ, այսինքն՝ $10^6$:

**ՄԻԼԻՈՆՇՉԻԿՈՎ** Միխայիլ Դմիտրիևիչ (1913—1973), սովետական գիտնական և հասարակական գործիչ, մեխանիկայի և կիրառական ֆիզիկայի մասնագետ: ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս (1962, թղթակից անդամ 1953-ից): ՍՍՀՄ ԳԱ փոխպրեզիդենտ



Մ. Դ. Միլիոնշչիկով

(1962-ից): Սոցիալիստական աշխատանքի հերոս (1967): ՍՄԿԿ անդամ 1947-ից: Ավարտել է Գրոզնու նավթի ինստ-ը (1932): Դասավանդել է Մոսկվայի ավիացիոն (1934—1943-ին), այնուհետև ինժեներաֆիզիկական ինստ-ներում: 1944—49-ին աշխատել է ՍՍՀՄ ԳԱ մեխանիկայի, այնուհետև ատոմային էներգիայի ինստ-ներում (1960-ից՝ դիրեկտորի տեղակալ): Աշխատանքները վերաբերում են տուրբուլենտության տեսության, կիրառական գազային դինամիկայի, միջուկային էներգետիկայի հարցերին: ՍՍՀՄ ԳԱ խմբագրական-հրատարակչական խորհրդի նախագահ (1966-ից): Սովետական մեծ հանրագիտարանի գլխավոր խմբագրության անդամ (1967-ից): Պագուոշի սովետական կոմիտեի նախագահ (1964-ից): ԱՄՆ-ի գիտությունների և արվեստի ակադեմիայի պատվավոր անդամ (1968-ից): Բեռլինի զերմ. ԳԱ արտասահմանյան անդամ (1971-ից): ՌՍՖՍՀ VII և VIII գումարումների Գերագույն սովետի նախագահ: Արժանացել է ՍՍՀՄ պետական (1951, 1954) և լենինյան (1961) մրցանակների: Պարգևատրվել է Լենինի 5 շքանշանով:

*Երկ.* Турбулентные течения в пограничном слое и в трубах, М., 1969.

**ՄԻԼԻՏԱՐԻԶՄ** (ֆրանս. militarisme, <լատ. militaris — ռազմական, զինվորական), շահագործողական պետության ռազմական հզորությունը մեծացնելու քաղաքականություն, ինչպես զավթողական պատերազմներ նախապատրաստելու, այնպես էլ երկրի ներսում աշխատավոր մասսաներին ճնշելու նպատակով: Լինելով մշտական երևույթ հակամարտ դասակարգերի բաժանված հասարակության մեջ, Մ., որպես տնտեսության, քաղաքականության ու գաղափարախոսության համակարգ, ձևավորվել է կապիտալիզմի ժամանակ և առավելագույն զարգացման հասել իմպերիալիզմի դարաշրջանում: «Մ.» տերմինը առաջին անգամ գործածվել է Ֆրանսիայում, XIX դ.՝ Նապոլեոն III-ի վարչակարգը բնութագրելու համար: Առաջին համաշխարհային պատերազմի նախօրեին Մ. ցայտուն կերպով դրսևորվել է Գերմանիայում, երկրորդ համաշխարհային պատերազմից առաջ բացի Գերմանիայից, նաև Ճապոնիայում և Իտալիայում: Ետպատերազմյան տարիներին Մ. բուռն վերելք ապրեց ԱՄՆ-ում, Մեծ Բրիտանիայում, ԳՖՀ-ում: Կազմավորվեցին ագրեսիվ ռազմ. խմբավորումներ (ՆԱՏՕ, ՍԵՆՏՕ, ՍԵԱՏՕ են), որոնք ուղղված են սոցիալիստական համագործակցության և զաղութային ու կախյալ երկրների ժողովուրդների ազատագրական պայքարի

դեմ: Մ-ի հետ է կապված արտաքին քաղաքականության և ռազմա-քաղաքական մի շարք դոկտրինաների (*«սառը պատերազմի»*, «ուժի դիրքերից» ևն) տարածումը: Բոլոր այդ տեսությունններն ու դոկտրինաները ծառայում են *հակակոմունիզմի* (ժամանակակից Մ-ի «գաղափարական» հիմքի) քաղաքականության իրականացմանը: Իմպերիալիստական խմբավորումների մասնակիցները զարկ են տալիս սպառազինությունների անզուսպ մրցավազքին՝ ավելացնելով ռազմ. բյուջեները, օրինակ, ԱՄՆ-ի ռազմ. ծախսերը 1970-ին կազմել են 76,5 մլրդ, 1973-ին՝ 85,1 մլրդ, 1980—81 ֆինանսական տարում՝ 171,4 մլրդ դոլլար: Անշեղորեն աճել են նաև ՆԱՏՕ-ի ռազմ. ծախսերը (1949-ին՝ 18,7 մլրդ, 1959-ին՝ 61,6 մլրդ, 1969-ին՝ 106 մլրդ, 1980-ին՝ մոտ 200 մլրդ դոլլար): Զենքի արտադրության հետ կապված մոնոպոլիստական կապիտալը հսկայական շահույթներ է կորզում ռազմ. պատվերներից: Միաժամանակ Մ. կրճատում է աշխատավորների բաժինը ազգային եկամտի մեջ՝ պակասեցնելով բնակարանային շինարարության, ժող. կրթության, բժշկ. սպասարկման համար ծախսերը, առաջ բերում կապիտալիստական երկրների վայլուտայի տատանումներ: Բացառիկ վտանգ է ներկայացնում միջուկային զենքի կուտակումը: Խաղաղասեր ուժերը և, առաջին հերթին Սովետական Միությունն ու սոցիալիստական համագործակցության երկրները, անդուլ պայքար են մղում Մ-ի դեմ՝ մշտապես հանդես գալով հանուն սպառազինությունների ու զինված ուժերի սահմանափակման և զինաթափման:

**ՄԻԼԻՑԻԱ** (լատ. militia — զորք), ՍՍՀՄ-ում պետության վարչական-գործադիր մարմին, որը կոչված է հանցավոր ոտնձգություններից ու այլ հակահասարակական գործողություններից պաշտպանել հասարակական կարգը, սոցիալիստական սեփականությունը, քաղաքացիների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների իրավունքներն ու օրինական շահերը: Ստեղծվել է բանվորական միլիցիայի մասին ՌՍՖՍՀ ներքին գործերի ժողկոմատի որոշմամբ, 1917-ի հոկտ. 28 (նոյեմբ. 10)-ին՝ բանվորների ու զինվորների դեպուտատների բոլոր սովետներում: Սկզբնական շրջանում Մ-ին վերապահված էր պահպանել հասարակական կարգը, աշխատանքային կարգապահությունը, հացի հայթայթումը, հոգալ անապաստան երեխաների մասին: Ի տարբերություն բուրժ. ոստիկանական մարմինների, որոնք ծառայում են բուրժ. վերնախավի շահերին, սովետական Մ., որպես բանվորա-գյուղացիական մարմին, կոչված էր պաշտպանելու սոցիալիստական հեղափոխության նվաճումները: 1921—1931-ին Մ. գտնվում էր տեղական սովետների, 1931—41-ին՝ ներքին գործերի ժողկոմատների կազմում: 1946-ից Մ. ներքին գործերի մինիստրության (1962—78-ին հասարակական կարգի պահպանության մինիստրություն) մարմին է: Նրա կազմակերպման ու գործունեության հիմքերը սահմանված են «Հասարակական կարգի պահպանության և հանցագործությունների դեմ պայքարում սովետական միլիցիայի հիմնական պարտականությունների ու իրավունքների մասին» ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության 1973-ի հրամանագրով, ինչպես նաև «Սովետական միլիցիայի մասին» կանոնադրությամբ: ՍՍՀՄ ներքին գործերի մինիստրությունը ղեկավարում է միութենական և ինքնավար հանրապետությունների Մ-ի բոլոր ծառայությունների գործունեությունը: Մ-ի և ներքին գործերի մարմինները ենթարկվում են համապատասխան սովետներին և ներքին գործերի վերադաս մարմիններին: Մ-ի պարտականություններից են հանցագործությունների նախազգուշացումն ու կանխումը, հանցագործությունների կամ այլ իրավախախտումների դեմ պայքարը: Մ-ի մարմիններն իրավունք ունեն յուրաքանչյուրից պահանջել հասարակական կարգի ու սոցիալիստական օրինականության հարգում: Հանցագործներին հետապնդելու նպատակով Մ-ի աշխատակիցներին իրավունք է վերապահված մուտք գործել քաղաքացիների բնակարաններ, պետ. ու հասարակական հաստատություններ, ստուգել անձնագրային ռեժիմի պահպանումը, իրավասությունների սահմաններում կատարել անհետաձգելի քննչական գործողություններ, *հետաքննություն*: Մ-ի մարմինները հսկում և ուղեկցորդում են կալանավորներին ու կասկածյալներին, հետախուզում են պատասխանատվությունից խուսափողներին ու անհայտ կորածներին: Նրանք ի կատար են ածում աքսորի ու արտաքսման մասին դատավճիռները: Մ-ի պետավտոտեսչության ծառայողները ապահովում են ճանապարհատրանսպորտային երթևեկության անվտանգությունը, հսկում են տրանսպորտի միջոցների տեխ. վիճակը ևն: ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսված հիմքերով և կարգով Մ-ի աշխատակիցներին, բացառիկ դեպքերում, թույլատրվում է օգտագործել զենք: ՍՍՀՄ-ում գործում է հասարակայնության ակտիվ աջակցությամբ: ՀՍՍՀ-ում Մ. ստեղծվել է հանրապետության հեղկոմի որոշմամբ (12 դեկտ. 1920)՝ ներքին գործերի ժողկոմատի կազմում: Այդ որոշման հիման վրա հանրապետության ներքին գործերի ժողկոմի հրամանով (13 դեկտ. 1920) տեղական կառավարման նախկին համակարգը վերացվել է, և ստեղծվել բանվորագյուղացիական Մ.: 1920-ի դեկտ. 15-ին (Մ-ի հիմնադրման օրը ՀՍՍՀ-ում) ստեղծվել են Մ-ի առաջին ջոկատները: *Ն. Ապիյան*

**ՄԻԼԼԵ** (Millet) Ժան Ֆրանսուա (1814—1875), ֆրանսիացի նկարիչ: Սովորել է Փարիզում (1837—38), Պ. Դելառոշի մոտ: 1830—40-ական թթ. ստեղծել է էկլեկտիկ նկարելակերպով դիմանկարներ, Ֆ. Բուշեի արվեստի ոգով պատկերներ, դիցաբանական կոմպոզիցիաներ: 1840-ական թթ. վերջին մերժելով *բարբիզոնի դպրոցի* ներկայացուցիչներին, սկսել է պատկերել գեղջկական կյանքը, խորը ռեալիզմով ցույց տվել գյուղացու ծանր աշխատանքը, ձգտել բանաստեղծականորեն մարմնավորել մարդու և բնության անխզելի կապը («Հասկ հավաքողները», 1857, «Անժելյուս», 1859, երկուսն էլ՝ Լուվր, Փարիզ): Գյուղացիների կերպարները,



Ժ. Ֆ. Միլլե

ինչպես և բնությունը, Մ-ի նկարներում վեհորեն պարզ են, թախծոտ: 1850—1860-ական թթ. աշխատանքներին բնորոշ են հորինվածքի հստակությունը, մոնումենտալությունը, *վալյորների* նուրբ համադրումները, կոլորիտի ծանր, հողագույն երանգները: Այդ շրջանի մի շարք աշխատանքներ քննադատական ուղղվածություն ունեն, միաժամանակ նահապետական կենցաղը չատագովելու որոշ միտում: 1850-ական թթ. կեսերից Մ. ստեղծել է բազմաթիվ օֆորտներ, կավճաներկով կատարված գործեր:

Պատկերազարդումը տես 624-րդ էջից հետո՝ ներդիրում:

*Գրկ.* Замятина А. Н., Милле, М., 1959.

**ՄԻԼԼԵՍ** (Milles) Կարլ (1875—1955), շվեդացի քանդակագործ: Սովորել է Փարիզում (1897—1904) և Մյունխենում (1905—1906): 1920—31-ին Ստոկհոլմի Թագավորական գեղարվեստի ակադեմիայի պրոֆեսոր: 1931-ից ստեղծագործել է ԱՄՆ-ում:



Կ. Միլլես. «Ագանիպպա», «Ագանիպպա» շատրվանի հատված (1955, Մետրոպոլիտեն թանգարան, Նյու Յորք)

1910-ական թթ. վերջերից ստեղծել է դեկորատիվ-մոնումենտալ քանդակներ (հիմնականում շատրվանների) ոչ սակավ՝ սալոնային էֆեկտներով: Մ-ի շատրվանային կոմպոզիցիաները (հիմնականում դիցաբանական սյուժեներով) առանձնանում են գեղանկարչությամբ, որի ստեղծման համար մեծ դեր են կատարում ջրաշիթերը («Պոսեյդոն», 1930, Գյոտեբորգ, «Օրփեոս», 1936, Ստոկհոլմ, «Ջրերի հանդիպումը», 1940, Սենտ Լուիս, ԱՄՆ, բոլորը՝ բրոնզ):

**ՄԻԼԼԵՐ** (Miller) Արթուր (ծն. 1915, Նյու Յորք), ամերիկացի դրամատուրգ: Ծնվել է հրեա մանր ձեռնարկատիրոջ ընտանիքում: Ավարտել է Միչիգանի համալսարանը (1938): «Մարդը, որի բախտը բերում էր» (1944) պիեսը և «Աճպարարություն» (1945) վեպը որոշեցին Մ-ի գեղարվեստական հետաքրքրությունների շրջանակը՝ շարքային մարդու բարոյական արժանապատվությունը, անհատի վարքագիծն ու

հոգեբանությունը հասարակական միջավայրում: «Բոլորը իմ որդիներն են» (1947) պիեսը պատկերում է պատերազմից հարըստացող արդյունաբերողի ընտանիքի քայքայումը: «Առևտրական գործակալի մահը» (1949) ողբերգությունը բացահայտում է տխրահռչակ «հաջողության» պատրանքների սնանկությունը: «Մանր փորձություն» (1953) պատմական ժամանակագրության նյութը XVII դ. իրադարձություններն են: Լույս են տեսել նաև Մ-ի «Տեսարան կամրջից» (1955), «Երկու երկուշաբթիների հետ կապված հուշեր» (1955), «Մեղսագործությունից հետո» (1964), «Սա պատահել է Վիշիում» (1965), «Գին» (1967), «Աշխարհի արարումը և այլ բաներ» (1972) պիեսները: 1965—71-ին Մ. եղել է P. E. N. (բանաստեղծներ, ակնարկագիրներ, վիպասաններ) ակումբի պրեզիդենտը: Նրա շատ պիեսներ մտել են սովետական թատրոնների խաղացանկի մեջ:

**ՄԻԼԼՈ** (Millo) Մատեի (1814—1896), ռումինացի դերասան և դրամատուրգ: Ռեալիստական դպրոցի առաջին ռումինացի դերասանը: 1857-ին կազմակերպել է սեփական թատերախումբ և ելույթներ ունեցել Բուխարեստում ու գավառներում: 1852—77-ին (ընդհատումներով) Ազգային թատրոնի (Բուխարեստ) դիրեկտորն էր և դերասան: Խաղացել է վոդևիլներում, ֆարսերում, Վ. Ալեքսանդրիի կոմեդիաներում, իր, ինչպես և Մոլիերի, Հյուգոյի, Շեքսպիրի պիեսներում: Եղել է ռումին թատրոնի ռեֆորմատորը, նպաստել ազգային դերասանական դպրոցի ձևավորմանը: Հեղինակ է պիեսների, երգիծական կոմեդիաների և ֆարսերի («Նիշկորեսկու», «Հին զգեստներ, քաղաքական ցնցոտիներ» ևն):

**ՄԻԼՅՈՒԿՈՎ** Պավել Նիկոլաևիչ (1859—1943), ռուս քաղաքական գործիչ, պատմաբան և հրապարակախոս: Կադետական կուսակցության (տես *Կադետներ*) հիմնադիրներից, կուսակցության ԿԿ նախագահը (1907-ից) և կուսակցության օրգան «Ռեչ» թերթի խմբագիրը: III և IV Պետա*կան դումաների անդամ*: 1905—07-ի հեղափոխության պարտությունից հետո ունեցել է հակահեղափոխական դիրքորոշում: 1917-ի Փետրվարյան հեղափոխության օրերին պայքարել է հանուն միապետության պահպանման: Բուրժ. ժամանակավոր կառավարության առաջին կաբինետի կազմում եղել է արտաքին գործերի մինիստր: Պատերազմը շարունակելու նրա ծրագիրը առաջ է բերել ապրիլյան ճգնաժամը (տես *Ապրիլյան ճգնաժամ 1917*): 1917-ի Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո գործակցել է սպիտակգվարդիականների և օտարերկրյա ինտերվենտների հետ: 1920-ից՝ վտարանդի (Լոնդոն, Փարիզ): Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ հանդես է եկել ֆաշիստների հետ ռուս վտարանդիների համագործակցության դեմ, ողջունել կարմիր բանակի հաջողությունները: Մ-ի պատմագիտական հայացքները արտահայտել են իմպերիալիզմի ժամանակաշրջանի ռուս. բուրժ. պատմական գիտության ճգնաժամը: Մերժելով պատմության զարգացման օրինաչափությունները՝ Մ. պատմության մեթոդաբանության հարցում մոտեցել է կանտական պոզիտիվիզմին:

**ՄԻԼՆ** (Milne) Էդուարդ Արթուր (1896—1950), անգլիացի աստղաֆիզիկոս: Ավարտել է Քեմբրիջի համալսարանը (1920): Եղել է Մանչեստրի (1925-ից) և Օքսֆորդի (1928-ից) համալսարանների պրոֆեսոր: Հետազոտել է էներգիայի ճառագայթային փոխանցումը, աստղերի մթնոլորտում նյութերի իոնացումը, Երկրի մթնոլորտի վերին շերտերի կառուցվածքը: Ուսումնասիրել է մոլորակների մթնոլորտի դիսիպացիայի տեսությունը, Արեգակի՝ արագ մասնիկներ ճառագայթելը, աստղերի ներքին կառուցվածքը: Գալակտիկաների սպեկտրներում կարմիր շեղման երևույթը բացատրելու համար ստեղծել է հարաբերականության ընդհանուր տեսության, այսպես կոչված, կինեմատիկական տարբերակը:

**ՄԻԼՈՆԻՏ** (< հուն. μύλος—երկանաքար), ծմլված, փշրված ապար. առաջանում է *խզումնային խախտումների*, հատկապես *վրաշարժերի* և *վերնետվածքների* գոտիներում: Կատակլիզիտից տարբերվում է մանրատվածության աստիճանով և զուգահեռ տեքստուրաների զարգացմամբ: Մ-ները հիմնականում կապված են խոշոր ռեգիոնալ խախտումների գոտիների հետ (Ուրալ, Տյան Շան, Կովկաս, Ալթայ ևն): Սովորաբար ձգվում են տասնյակ *կմ*-եր և ունեն մի քանի հարյուր *մ* լայնություն:

**ՄԻԼՈՇ ՕԲՐԵՆՈՎԻՉ**, Միլոշ Թեոդորովիչ (1780—1860), սերբական իշխան 1815—39 և 1858—60-ին, Օբրենովիչների դինաստիայի հիմնադիրը: Մասնակցել է 1804—13-ի առաջին սերբական ապստամբությանը, որի պարտությունից հետո, թուրք. իշխանություններից նշանակվել է սկզբում երեք նահիեների, ապա՝ ամբողջ Սերբիայի գերագույն իշխան: Գլխավորել է 1815-ի երկրորդ սերբական ապստամբությունը, կարողացել է նշանակվել Սերբիայի ժառանգական կառավարիչ: Թուրքիայի կողմից Սերբիային ներքին ինքնավարություն տալուց հետո դարձել է, ըստ էության, Սերբիայի անսահմանափակ կառավարիչը (իշխանը): Օպոզիցիայի դեմ պայքարում Մ. Օ. պարտվել է և 1839-ին հրաժարվելով գահից, հեռացել է Սերբիայից: 1858-ին սերբական Սկուպշտինան վերստին նրան վերադարձրել է գահին:

**ՄԻԼՍ** (Mills) Չարլզ Ռայթ (1916—1962), ամերիկյան լիբերալ բուրժուական սոցիոլոգ, հրապարակախոս: Կոլումբիայի համալսարանի պրոֆեսոր (1956-ից): Բուրժ. հումանիզմի դիրքերից քննադատել է ԱՄՆ-ի կառավարության քաղաքականության հակաժողովրդական և զավթողական միտումները («Իշխող վերնախավը», 1956), մերկացրել իմպերիալիզմի գիշատիչ բնույթը («Երրորդ համաշխարհային պատերազմի պատճառները», 1958), պաշտպանել հեղափոխությունը Կուբայում («Լսեցե՛ք, յանկիներ: Կուբայում հեղափոխություն է», 1960): Մ. անդրադարձել է Կ. Մարքսի հայացքներին, գնահատել նրա մեթոդի նշանակությունը, սակայն տեսությունը համարել է «հնացած» («Մարքսիստները», 1962): Նման ոչ գիտական մոտեցում է դրսևորել նաև լենինիզմը արժեքավորելիս, այն կտրել մարքսիզմից: Մ. մերժում է բանվոր դասակարգի հեղափոխական դերը և մտավորականությանը համարում հասարակական առաջադիմության միակ կրողը: Քննադատել է ամերիկյան սոցիոլոգիայի էմպիրիզմը և վերացական ակադեմիզմը, հիմնավորել «նոր սոցիոլոգիայի»՝ սոցիալապես ակտիվ սոցիոլոգիայի, անհրաժեշտությունը («Սոցիոլոգիական երևակայությունը», 1959): Մ. տուրք է տալիս սցիենտիզմին, պնդելով, թե նոր մտածելակերպը՝ «սոցիոլոգիական երևակայությունը», ինքնին ի վիճակի է բարեփոխել կապիտալիստական հասարակությունը:

*Գրկ.* Коровин В. Ф., Основные проблемы «новой социологии» Райта Миллса, М., 1977. *Վ. Միրզոյան*

**ՄԻԼՏԻԱԴԵՍ** (Μιλτιάδης, մ. թ. ա. մոտ 550—489), աթենական պետական գործիչ և զորավար: Զորավար *Կիմոնի* հայրը: Մ. թ. ա. 523 և 513-ի ժամանակամիջոցում աքսորվել է Թրակիայի Խերսոնես քաղաքը, ուր ժառանգել է եղբոր իշխանությունը և դարձել տիրանոս (մինչև մ. թ. ա. 493-ը): Աթենքին է ենթարկել Լեմնոս կղզին և Կիկլադյան այլ կղզիներ: Աջակցել է մ. թ. ա. 500—494-ին Պարսկաստանի դեմ Փոքր Ասիայի ապստամբած հույներին: Ապստամբության ճնշումից հետո փախել է Աթենք, դատվել իբրև տիրանոս, սակայն արդարացվել է: Մ. թ. ա. 490-ին ընտրվել է ստրատեգոս և ղեկավարել աթենական զորքը *Մարաթոնի* ճակատամարտում: Մ. թ. ա. 489-ին գլխավորել է պարսիկներին օգնած կղզիների դեմ պատժիչ արշավանքը: Պարոս կղզում ռազմ. անհաջող գործողությունների համար դատվել է, սակայն շուտով մահացել ծանր վերքից:

**ՄԻԼՏՈՆՅԱՆ** Շուշանիկ (ծն. 1940, Վենետիկ), հայ ջութակահարուհի: 1959-ին, ավարտելով Վենետիկի կոնսերվատորիան, դարձել է նույն կոնսերվատորիայի պրոֆեսոր: Համերգային ելույթները սկսել են 13 տարեկանից, շրջագայել է աշխարհի շատ երկրներում (Հայաստանում հանդես է եկել 1968-ին): 1959-ին Թել Ավիվում ջութակահարների անդրանիկ միջազգային մրցույթի, 1962-ին՝ Փարիզի ազգային կոնսերվատորիայի, 1964-ին՝ Շվեյցարիայի, 1971-ին Մարսել Տուրնիեի անվ. և տասնյակ այլ միջազգային մրցույթների դափնեկիր է: 1960-ից բնակվել է Փարիզում, ապա դարձել է Բրյուսելի սիմֆոնիկ նվագախմբի մենակատարը: Համերգային հայտագիրն ընդգրկում է հնագույն երաժշտությունից մինչև նորագույնը: *Ց. Բրուտյան*

**ՄԻԼՈՒՈՔԻ** (Milwaukee), քաղաք ԱՄՆ-ի հյուսիսում, Վիսքոնսին նահանգում: 633 հզ. բն. (արվարձաններով՝ 1,4 մլն, 1978): Նավահանգիստ է Միչիգան լճի արմ. ափին: ԱՄՆ-ի կաթնաանասնապահական շրջանի արմ. մասի և Վիսքոնսին նահանգի արդ. ու առևտրական կենտրոնն է: Արդյունաբերության գլխավոր ճյուղերն են մեքենաշինությունը և մետաղամշակումը: Զարգացած է նաև սննդի, կաշվիկոշիկի, տրիկոտաժի, պոլիգրաֆ արդյունաբերությունը: Ունի համալսարան: Հիմնադրվել է 1818-ին:

**ՄԻԽԱԼԿՈՎ** Սերգեյ Վլադիմիրովիչ [ծն. 28.2(13.3).1913, Մոսկվա], ռուս սովետական գրող, հասարակական գործիչ: ՍՍՀՄ մանկավարժական ԳԱ ակադեմիկոս (1971), ՌՍՖՍՀ արվեստի վաստ. գործիչ (1967), սոցիալիստական աշխատանքի հերոս (1973): ՍՄԿԿ անդամ 1950-ից: Սովորել է Մ. Գորկու անվ. գրականության ինստ-ում (1935—37): Հայտնի են Մ-ի մանկական ստեղծագործությունները: Հայրենական մեծ պատերազմի տարիներին Մ. եղել է ռազմաճակատային թերթերի թղթակից: Հեղինակ է բազմաթիվ ակնարկների, պատմվածքների, երգիծական բանաստեղծությունների, ֆելիետոնների, առակների: Գրել է պիեսներ մանկական թատրոնի համար՝ «Թոմ Քենտի» (1938), «Հատուկ հանձնարարություն» (1945), «Սոմբրերո» (1957), «Սիրելի տղա» (1971), և մեծերի համար՝ «Իլյա Գոլովին» (1950), «Որսորդը» (1956), «Վայրենիներ» (1958), «Խեցգետինները և կոկորդիլոսը» (1960) ևն: Աճող սերնդի դաստիարակության խնդիրներին է նվիրված նրա «Ամեն ինչ սկսվում է մանկուց» (1968) մանկավարժական հոդվածների ու գրառումների ժողովածուն: 1976-ին լույս է տեսել Մ-ի «Ժամանակի նշանները» գիրքը (արդի գրական հարցեր): 1970-ից՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ: ՍՍՀՄ գրողների միության վարչության քարտուղար, ՌՍՖՍՀ գրողների միության Մոսկվայի կազմակերպության վարչության առաջին քարտուղար (1965—70), ՌՍՖՍՀ գրողների միության նախագահ (1970-ից): «*Ֆիտիլ*» երգիծական կինոժուռնալի գլխավոր խմբագիր (1962-ից): ՍՍՀՄ պետ. մրցանակի (1941, 1942, 1950, 1978) և լենինյան մրցանակի (1970) դափնեկիր: Պարգևատրվել է Լենինի 3, Հոկտեմբերյան հեղափոխության և այլ շքանշաններով:

*Երկ.* Собр. соч., т. 1—3, М., 1970—71; Մանուկների համար, Ե., 1949: Առակներ, Ե., 1951: Քեռի Ստյոպան, Ե., 1956: Քաոականչների տոնը, Ե., 1975:

**ՄԻԽԱՅԵԼՈՎԿԱ**, գյուղ Հայկական ՍՍՀ Կալինինոյի շրջանում, Տաշիր գետի ափին, շրջկենտրոնից 7 *կմ* հյուսիս-արևելք: Կոլտնտեսությունն զբաղվում է անասնապահությամբ, կարտոֆիլի, ճակնդեղի, հացահատիկի և կերային կուլտուրաների մշակությամբ: Ունի ութամյա դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կինո, կապի բաժանմունք, մանկապարտեզ, կենցաղսպասարկման տաղավար, բուժկայան:

Միխայելովկա

**ՄԻԽԱՅԻԼ ՆԻԿՈԼԱԵՎԻՉ** Ռոմանով (1832—1909), մեծ իշխան, *Նիկոլայ I*-ի չորրորդ որդին, գեներալ-ֆելդմարշալ (1878): 1852-ից՝ գեն.-ֆելդցայխմայստեր: Կովկասի փոխարքա և Կովկասյան բանակի հրամանատար (1862—82), 1877—78-ի ռուս-թուրքական պատերազմի ժամանակ՝ Կովկասյան բանակի գլխավոր հրամանատար: Պետական խորհրդի նախագահ (1881—1905): Արտահայտել է ազնվականության պահպանողական շրջանների շահերը:

**ՄԻԽԱՅԻԼ ՖԵՈԴՈՐՈՎԻՉ** Ռոմանով (1596—1645), ռուսական ցար, առաջինը *Ռոմանովների* դինաստիայից: Բոյար Ֆեոդոր Ռոմանովի (հետագայում՝ պատրիարք) որդին: Լեհ ինտերվենտներին Մոսկվայից վտարելուց հետո, 1613-ի փետրվարին, բոյարների նախաձեռնությամբ Զեմստվային ժողովում ընտրվել է ցահակալ: Երկրի կառավարման գործում մեծ դեր են խաղացել Մ. Ֆ-ի ազգականները, իսկ 1619—33-ին փաստորեն կառավարել է պաշտոնապես «մեծ թագավոր» տիտղոս կրող պատրիարք հայրը (Ֆիլարետը): Մ. Ֆ-ի օրոք փակոցային ամրությունները են կառուցվել Ղրիմի թաթարների դեմ, շարունակվել է Սիբիրի հետագա գաղութացումը:

**ՄԻԽԱՅԼՈՎՍԿԻ** Նիկոլայ Կոնստանտինովիչ (1842—1904), ռուս հրապարակախոս, լիբերալ նարոդնիկության տեսաբան, գրաքննադատ: Ծագումով՝ ազնվական: Սովորել է Պետերբուրգի հանքային ինժեներների ինստ-ում, հեռացվել ուսանողական հուզումներին մասնակցելու համար: Աշխատակցել է ժամանակի առաջադիմական մամուլին: 1879-ին հարել է «*Նարոդնայա վոլյա*»-ին: Իրեն համարում էր Ն. Չեռնիշևսկու հետևորդ, իրականում, նրա համեմատությամբ, «...փիլիսոփայության մեջ կատարեց **մի քայլ ետ**» (Լ ե ն ի ն Վ. Ի., Երկ. լիակտ. ժող., հ. 24, էջ 408): Պ. *Լավրովի* հետ մշակել է «իդեալի» ազատ ընտրության գաղափարը, որն առաջավոր մտավորականության առաջադրած ուղիով հասարակության վերափոխման փիլիսոփայական հիմնավորումն էր: Մ. տարբերակում և իրար է հակադրում օբյեկտիվ (բնության ուսումնասիրության) և սուբյեկտիվ (հասարակության ուսումնասիրության) մեթոդները: Սուբյեկտիվ մեթոդը հասարակությունը դիտում է որպես գործունեության ազատ ընտրության գիտակցությամբ օժտված մարդկանց հանրագումար, մերժում օբյեկտիվ օրինաչափությունները: Ըստ Մ-ու, անհատը պատմական հետազոտման ելակետն է և հասարակական արժեքների բարձրագույն չափանիշը: «Նարոդնայա վոլյա»-ի ջախջախումով սկսվում և հետզհետե խորանում է Մ-ու գաղափարական ճգնաժամը, որն արտահայտվեց «հերոսների և ամբոխի» ուսմունքում: Մ-ու համոզմամբ, արդի հասարակարգի դաժան օրենքները ժող. զանգվածներին վերածում են «ամբոխի». պատմությունը կերտում է «հերոսը», որն իր օրինակով կարող է սխրանքի կամ հանցանքի մղել «ամբոխին»: Մ. անդրադարձել է Կ. Մարքսի տեսական ժառանգությանը և պաշտպանել նրա տնտեսագիտական հայացքները («Կ. Մարքսը պ. Յու. Ժուկովսկու դատաստանի առաջ», 1877): Սակայն, ինչպես նկատել է Վ. Ի. Լենինը, նրան «...վերին աստիճանի բնորոշ է այդ դոկտրինան լիովին չըմբռնելը...» (ն ու յ ն տ ե ղ ու մ, հ. 2, էջ 625): Անհիմն քննադատել է մարքսիստներին կապիտալիզմը պաշտպանելու, 60—70-ական թթ. հեղափոխական ժառանգությունից հրաժարվելու համար: Վ. Ի. Լենինը բացահայտել է Մ-ու հայացքների սնանկությունը, միաժամանակ նշել նրա «...պատմական մեծ ծառայությունը բուրժուա-դեմոկրատական շարժման մեջ hօգուտ Ռուսաստանի ազատագրության...» (նույն տեղում, հ. 24, էջ 407):

Որպես գրաքննադատ Մ. շարունակում էր հեղափոխական դեմոկրատների լավագույն ավանդույթները: Գրողը հասարակության բարոյական դատավորն է, գրականությունը՝ խղճի ձայնը: Աշխատանքներ է նվիրել Լ. Տոլստոյին, Ֆ. Դոստոևսկուն, Գ. Ուսպենսկուն, Վ. Գարշինին, Մ. Գորկուն ևն, պայքարել է «մաքուր արվեստի» և նատուրալիզմի դեմ: Հայ իրականության մեջ Մ-ու հայացքներին անդրադարձել և որոշ ըմբռնումներն որդեգրել են Ե. Ֆրանգյանը և նրան հարող այլ փիլիսոփաներ:

*Երկ.* Полн. собр. соч., т. 1—8, 10, СПБ, 1906—14.

*Գրկ.* Լ ե ն ի ն Վ. Ի., Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ, Երկ. լիակտ. ժող., հ. 1: Ն ու յ ն ի, Նարոդնիկության տնտեսական բովանդակությունը և նրա քննադատությունը պ-րն Ստրուվեի գրքում, նույն տեղում: Ֆ ր ա ն գ յ ա ն Ե., Ն. Կ. Միխայլովսկին որպես փիլիսոփա-սոցիոլոգ, Ե., 1911: Г о р е в Б. И., Н. К. Михайловский, М., 1931.

**ՄԻԽԵԵՎ** Միխայիլ Ալեքսանդրովիչ (1902—1970), ջերմատեխնիկայի բնագավառի սովետական գիտնական, ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս (1953, թղթակից անդամ՝ 1946): 1927-ին ավարտել է Լենինգրադի պոլիտեխնիկական ինստ-ը: 1925—34-ին աշխատել է Լենինգրադի ֆիզիկա-տեխնիկական ինստ-ում, 1933-ից՝ ՍՍՀՄ ԳԱ Գ. Մ. Կրժիժանովսկու անվ. էներգետիկական ինստ-ում: 1935—54-ը միաժամանակ եղել է Մոսկվայի էներգետիկական ինստ-ի պրոֆեսոր: Հիմնական աշխատությունները նվիրված են ջերմահաղորդման և ջրային պրոցեսների ֆիզիկական մոդելավորման հարցերին: ՍՍՀՄ պետ. մրցանակ (1941, 1951): Պարգևատրվել է Լենինի շքանշանով:

**ՄԻԽԻՆ** Նիկոլայ Անդրիանովիչ (1872—1946), սովետական անասնաբույժ, մանրէաբան: Անասնաբուժական գիտ. դ-ր (1936), պրոֆեսոր (1919): Մոսկվայի անասնաբուժական ինստ-ի առաջին ռեկտորը (1919-ից), հետագայում՝ մանրէաբանության ամբիոնի վարիչ: Հիմնական աշխատանքները վերաբերում են բակտերիոլոգիայի և իմունոլոգիայի հարցերին: Հայտնաբերել է խոշոր եղջերավոր կենդանիների լեպտոսպիրոզի հարուցիչը, մշակել մի շարք վակցինաների և շիճուկների ստացման եղանակներ:

*Երկ.* Курс частной микробиологии для ветеринарных врачей и студентов, М.—Л., 1926.

**ՄԻԽՈԵԼՍ** (իսկական ազգանունը՝ Վ ո վ ս ի) Սոլոմոն Միխայլովիչ (1890—1948), հրեա սովետական դերասան: ՍՍՀՄ ժող. արտիստ (1939): 1919-ին ընդունվել է

Պետրոգրադի հրեական թատերական ստուդիան, որի հիմքի վրա ստեղծվել է Մոսկվայի հրեական կամերային թատրոնը (1925-ից՝ Մոսկվայի պետ. հրեական թատրոն): Նույն թատրոնում (լեզուն՝ *իդիշ*) Մ. եղել է դերասան, ռեժիսոր, 1929-ից՝ գեղարվեստական ղեկավար: Մ-ի ստեղծած բեմական կերպարներն առանձնանում էին փիլիսոփայական խորությամբ, քաղ. կրքոտ տեմպերամենտով, ձևի մոնումենտալությամբ և սրությամբ: Սկզբում խաղացել է կենցաղային և կատակերգական դերեր, նրանց հաղորդելով կերպարների սեփական արժանապատվության զգացողությունը, կյանքի թշվառ իրավիճակից հոգեպես բարձրանալու ձգտումը (Բենիամին III, Մենդելե Մոյխեր-Սֆորիմի «Բենիամին III-ի ճանապարհորդությունը»): Որպես ողբերգակ դերասան, Մ-ի տաղանդը առավելապես բացահայտվել է Լիր արքայի (Շեքսպիրի



Ս. Մ ի խ ո ե լ ս ը Լիրի դերում (Շեքսպիրի «Լիր արքա»)

«Լիր արքա», 1935) և կաթնավաճառ Տևյեի (Շոլոմ Ալեյխեմի «Կաթնավաճառ Տևյեն», 1938) դերերում: Մ-ի ռեժիսորական լավագույն աշխատանքը հրեական երաժշտական ֆոլկլորի մոտիվներով ստեղծված «Ֆրեյլեխս» (1945, ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1946) ներկայացումն էր: Իր հոդվածներում և դասախոսություններում Մ. պրոպագանդել է փիլիսոփայական խոր մտքի, համարձակ ու վառ արտահայտչականության թատրոնը: Դասավանդել է Մոսկվայի հրեական թատրոնին կից ուսումնարանում (1941-ից՝ պրոֆեսոր):

*Երկ.* Статьи. Беседы. Речи. Воспоминания о Михоэлсе, 2 изд., М., 1965.

*Գրկ.* Гринвальд Я. Б., Михоэлс, М., 1948.

**ՄԻԿԱԴՈ** (բառացի՝ վեհապանծ դուռ), Ճապոնիայի կայսրերի տիտղոսը:

**ՄԻԿԵԼՐԻՓՇ**, հայաբնակ գյուղ Աբխազական ԻՍՍՀ Գագրայի շրջանում, շրջկենտրոնից 42 *կմ* հյուսիս-արևմուտք: Կոլտնտեսությունն զբաղվում է ծխախոտի և եգիպտացորենի մշակությամբ, անասնապահությամբ, թռչնաբուծությամբ: Ունի միջնակարգ դպրոց, գրադարան, ակումբ-կինո, կապի բաժանմունք: Մ. հիմնադրել են Սամսունից եկած հայերը, 1893-ին:

**ՄԻԿԵՆԱՍ** Յուոզաս Յոկուբո (1901—1964), լիտվացի սովետական քանդակագործ, լիտվական սովետական քանդակագործության հիմնադիրը: ՍՍՀՄ ժող. նկարիչ (1961): ՍՍՀՄ Գեղարվեստի ակադեմիայի թղթակից անդամ (1954): ՍՄԿԿ



Յու. Յո. Մ ի կ ե- ն ա ս. Մարիտե Մելնիկայտեի հուշարձանը (1955) Զարասայում, հատված

անդամ 1952-ից: Սովորել է Կաունասի գեղարվեստի դպրոցում (1922—26) և Փարիզում (1927—31): Դասավանդել է Կաունասի և Վիլնյուսի գեղարվեստի ուս. հաստատություններում (1946-ից՝ պրոֆեսոր): Գործերին բնորոշ են ռոմանտիկ ընդհանրացվածությունը, կերպարների նուրբ ոգեշնչվածությունը: Աշխատանքներից են՝ «Մայր» հարթաքանդակը (մարմար, 1935, Կաունասի գեղարվեստական թանգարան), «Լիտվա» արձանը (գիպս, 1939), «Հաղթանակ» խմբաքանդակը Կալինինգրադում (բրոնզ, 1946, ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1947), Մ. Մելնիկայտեի հուշարձանը Զարասայում (բրոնզ, 1947—55), «Առաջին ծիծեռնակները» (գիպս, 1964, Լիտվ. ՍՍՀ պետ. մրցանակ, 1966, Լիտվ. ՍՍՀ գեղարվեստական թանգարան, Վիլնյուս):

**ՄԻԿԼՈՇԻՉ** (Miklošič, Miklosich) Ֆրանց (Ֆրանյո, 1813—1891), ավստրիական և սլովենական լեզվաբան: Վիեննայի ԳԱ ակադեմիկոս (1851), սլավ. լեզուների քերականության պատմահամեմատական ուսումնասիրության դպրոցի հիմնադիր: Վիեննայի համալսարանի պրոֆեսոր (1850—86): Կարևոր աշխատությունները նվիրված են սլավ. լեզուների քերականության ու բառապաշարի համեմատական քննությանը («Սլավոնական լեզուների համեմատական քերականություն», հ. 1—4, 1852—75): Մ. ուսումնասիրել է հին սլավ. («Հին սլավոներենի բառարան», 1850), այն բխեցրել Պաննոնիայի հին սլավոնացիների՝ սլովենների նախահայրերի լեզվից: Քննել է նաև մի կողմից սլավոներենի, մյուս կողմից՝ հարևան ժողովուրդների (հունգարացիների, ռումինացիների ևն) լեզուների փոխազդեցությունը, գնչուերենի մի շարք տարբերակներ: Զբաղվել է սլավ. անձնանունների և տեղանունների ծագումնաբանությամբ, հրատարակել միջնադարյան սլավ. տեքստերի, սլավոնների պատմության սկզբնաղբյուրներ: Ուսումնասիրել է սլավ. գրականությունները, սկզբնավորել սլավ. էպոսի համեմատական քննությունը: Եղել է Պետերբուրգի և այլ ԳԱ-ների անդամ:

*Երկ.* Etymologisches Wörterbuch der slavischen Sprachen, Wien, 1886; Lexicon palaeoslavenico-graeco-latinum emendatum auctum, fasc. 1—6, Vindobonae, 1862—65.

*Գրկ.* Ягич И. В., История славянской филологии, СПБ, 1910.

**ՄԻԿԼՈՒԽՈ-ՄԱԿԼԱՅ** Նիկոլայ Նիկոլաևիչ (1846—1888), ռուս գիտնական, ազգագրագետ, ճանապարհորդ և հասարակական գործիչ: 1863-ին ընդունվել է Պետերբուրգի համալսարան, 1864-ին, ուսանողական շարժմանը մասնակցելու համար, հեռացվել: Բնագիտական ուսումը շարունակել է Հայդելբերգի (1864), Լայպցիգի (1865) և Ենայի (1866—68) համալսարաններում: 1866—67-ին ճանապարհորդել է դեպի Կանարյան կղզիներ և Մարոկկո: 1869-ին Կարմիր ծովի ափերը այցելելուց հետո վերադարձել է Ռուսաստան: 1870—1880-ական թթ. ուսումնասիրել է Հարավ-Արևելյան Ասիայի, Ավստրալիայի, Խաղաղ օվկիանոսի կղզիների, հատկապես՝ Նոր Գվինեայի բնիկների մարդաբանական և ազգագրական առանձնահատկությունները: Մ-Մ. պաշտպանել է մարդկային ռասաների տեսակային ընդհանրության և փոխադարձ ազգակցության գաղափարը, ժխտել Նոր Գվինեայի նեգրոիդների (պապուասների)՝ որպես հատուկ,



Ն. Ն. Միկլուխո-Մակլայ

մարդկային այլ ռասաներից տարբեր տեսակի վերաբերյալ իր ժամանակ տարածված հայացքները: Մ-Մ. առաջինը հանգամանորեն նկարագրել է մելանեզական մարդաբանական տիպը: Նա ապացուցեց, որ Օվկիանիայի և Հարավ-Արևելյան Ասիայի ժողովուրդները զարգացման ցածր աստիճանի վրա են գտնվում զուտ պատմական պայմանների հետևանքով և ունակություններով չեն զիջում եվրոպացիներին: Մ-Մ-ի մարդաբանական և ազգագրական հարուստ հավաքածուները պահպանվել են Լենինգրադի ազգագրության և մարդաբանության թանգարանում: Մ-Մ-ի անունով է կոչվում ՍՍՀՄ ԳԱ ազգագրության ինստ-ը:

*Երկ.* Собр. соч., т. 1—5, М.—Л., 1950—1954.

**ՄԻԿՈԲԱԿՏԵՐԻԱՆԵՐ** (Mycobacterium) (< հուն. μύκης — սունկ և *բակտերիաներ*), բակտերիաների ցեղ: Երիտասարդ բջիջները ցուպիկաձև են, ճյուղավորվելու ընդունակ: Էնդոսպորներ չեն առաջացնում, գրամդրական են, անշարժ, խիստ աերոբ: Բազմանում են կիսմամբ և բողբոջմամբ: Պարունակում են կարոտինոիդներ, ուստի գաղութները հաճախ լինում են դեղնավուն, կարմիր: Լայնորեն տարածված են հողում, ջրում, մասնակցում են բուսական մնացորդների միներալացմանը, որոշ տեսակներ ազոտֆիքսող են: Առանձին Մ. ախտածին են, առաջացնում են ծանր հիվանդություններ (տուբերկուլոզ, բոր), որոշները կիրառվում են սիլոսի, կաթնամթերքների, պանրի ևն պատրաստման համար:

**ՄԻԿՈՅԱՆ** Ալեքսեյ Անաստասի (ծն. 20.12. 1925, Դոնի Ռոստով), ավիացիայի գեներալ-լեյտենանտ (1972): Ա. Հ. *Միկոյանի*

որդին: ՍՄԿԿ անդամ 1945-ից: Ավարտել է ռազմաօդային ակադեմիան (1949, այժմ՝ Յու. Ա. Գագարինի անվ.), Վ. Ի. Լենինի անվ. ռազմաքաղաքական ակադեմիան (1953), Կ. Ե. Վորոշիլովի անվ. ռազմ. ակադեմիան (1958): 1943-ից, որպես օդաչու, ավագ օդաչու, օդակի հրամանատար, մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: Պատերազմից հետո եղել է ավիացիոն գնդի, ապա՝ դիվիզիայի հրամանատար: Այժմ ծառայում է ռազմաօդային ուժերի գլխավոր հրամանատարությունում:

Պարգևատրվել է Կարմիր դրոշի 2, Կարմիր աստղի 3 ևն շքանշաններով:

**ՄԻԿՈՅԱՆ** Անաստաս Հովհաննեսի (Իվանի) [13(25).11.1895, գ. Սանահին (այժմ՝ ՀՍՍՀ Թումանյանի շրջանում)—21.10. 1978, Մոսկվա], սովետական պետական և կուսակցական գործիչ, սոցիալիստական աշխատանքի հերոս (1943): ՍՄԿԿ անդամ 1915-ից: Ավարտել է Թիֆլիսի Ներսիսյան դպրոցը, սովորել Էջմիածնի Գևորգյան ճեմարանում: Ընդունվելով ՌՍԴԲԿ շարքերը՝ հեղափոխական աշխատանք է կատարել Էջմիածնում և Թիֆլիսում, թղթակցել ս-դ. մամուլին: 1917-ի Փետրվարյան հեղափոխությունից հետո Էջմիածնում կազմակերպել է բանվորագյուղացիական սովետ, ընտրվել ՌՍԴԲԿ Թիֆլիսի կոմիտեի կազմում: 1917-ի հոկտեմբերին մասնակցել է Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների I համագումարին, ապա ընտրվել է բոլշևիկների Բաքվի կոմիտեի նախագահության անդամ: Այդ շրջանում խմբագրել է «Սոցիալ-դեմոկրատ» (հայերեն) թերթը, ավելի ուշ՝ «Իզվեստիա Բակինսկոգո սովետա» («Известия Бакинского совета»): 1918-ի մարտին մասնակցել է մուսավաթիստական խռովության ճնշմանը, վիրավորվել: Գերմանա-թուրքական ինտերվենցիայի դեմ մղվող պայքարի շրջանում (1918-ի ամառ) եղել է կարմիր բանակի բրիգադի կոմիսար: Բաքվի կոմունայի պարտությունից հետո, 1918-ի հուլիսին՝ կուսակցության ընդհատակյա քաղկոմի նախագահ, փորձել է ազատել ձերբակալված *Բաքվի 26 կոմիսարներին*, սակայն ինքը ևս ձերբակալվել է Կրասնովոդսկում և միայն պատահականորեն փրկվել գնդակահարությունից: 1919-ի մարտից նա գլխավորել է Ադրբեջանի բոլշևիկների ընդհատակը, ընտրվել Կովկասյան երկրային կոմիտեի անդամ: Կապեր է հաստատել Մոսկվայի և Աստրախանի հետ, կազմակերպել նավթամթերքների առաքումը կարմիր բանակին: 1919-ին մեկնել է Մոսկվա և հանդիպել Վ. Ի. Լենինի հետ: 1920-ի ապրիլին 11-րդ կարմիր բանակի զրահագնացքների ջոկատի հետ մտել է Բաքու և օգնություն ցույց տվել ապստամբ աշխատավորներին: 1920-ից՝ Նիժնի Նովգորոդի (այժմ՝ Գորկի) կուսակցության նահանգային կոմիտեի բաժնի վարիչ, բյուրոյի անդամ, քարտուղար, 1922—24-ին՝ ՌԿ(բ)Կ Հարավ-արևելյան բյուրոյի քարտուղար (Դոնի Ռոստով): 1924—26-ին՝ կուսակցության Հյուսիսային Կովկասի երկրկոմի քարտուղար: 1926—30-ին եղել է ՍՍՀՄ արտաքին և ներքին առևտրի ժողկոմ: 1930—34-ին՝ մատակարարման ժողկոմ, 1934—37-ին՝




Ա. Հ. Միկոյան Ա. Հ. Միկոյան

սննդարդյունաբերության ժողկոմ· 1937—1946-ին՝ ՍՍՀՄ Ժողկոմխորհի նախագահի տեղակալ, միաժամանակ (1938—1946-ին)՝ արտաքին առևտրի ժողկոմ: 1941—46-ին՝ ՍՍՀՄ ԺԿԽ-ի բյուրոյի անդամ: 1941—45-ի Հայրենական մեծ պատերազմի ժամանակ Մ. եղել է կարմիր բանակի մթերա-իրային մատակարարման կոմիտեի նախագահ, ՍՍՀՄ պաշտպանության պետ. կոմիտեի անդամ. հսկել է զորքերի մատակարարման կազմակերպման գործը: 1946—55-ին եղել է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, 1955—64-ին՝ առաջին տեղակալ: Միաժամանակ, 1946—49-ին՝ ՍՍՀՄ արտաքին առևտրի, 1953—55-ին՝ ՍՍՀՄ առևտրի մինիստր: 1964—65-ին՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության նախագահ, 1965—74-ին՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության անդամ: Եղել է ՍՄԿԿ X—XXIV համագումարների պատվիրակ, ՍՄԿԿ ԿԿ անդամ (1923-ից), ՍՄԿԿ ԿԿ Քաղբյուրոյի անդամության թեկնածու (1926—35), Քաղբյուրոյի անդամ (1935—1952), ՍՄԿԿ ԿԿ Նախագահության անդամ (1952—66): ՍՍՀՄ Կենտգործկոմի անդամ (1922-ից), ՍՍՀՄ I—VIII գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Հեղինակ է սովետական էկոնոմիկային և կուսակցության պատմությանը նվիրված մի շարք աշխատությունների: Պարգևատրվել է Վ. Ի. Լենինի 6, Հոկտեմբերյան հեղափոխության, Կարմիր դրոշի շքանշաններով և մեդալներով:

*Երկ.* Պայքարի ուղիով, գիրք 1, Ե., 1972: Քառանկան թվականների սկզբին (1919—1924 թ. սկիզբ), Ե., 1978: Пищевая индустрия Советского Союза (Речи и доклады), М., 1939; Мысли и воспоминания о Ленине, М., 1970.

**ՄԻԿՈՅԱՆ** Արտեմ Հովհաննեսի [23.7(5.8). 1905, գ. Սանահին (այժմ՝ ՀՍՍՀ Թումանյանի շրջանում)—9.12.1970, Մոսկվա], սովետական ավիակոնստրուկտոր: Ա. Հ. *Միկոյանի* եղբայրը: ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս (1968, թղթակից անդամ՝ 1953), ինժեներա-տեխնիկական ծառայության գեներալ-գնդապետ, սոցիալիստական աշխատանքի կրկնակի հերոս (1956, 1957): ՍՄԿԿ անդամ 1925-ից: 1923-ից, որպես խառատ, աշխատել է Դոնի Ռոստովի, ապա՝ Մոսկվայի «Դինամո» գործարաններում: 1936-ին ավարտել է Ն. Ե. Ժուկովսկու անվ. ռազմաօդային ինժեներական ակադեմիան: Աշխատել է ավիացիոն գործարանում որպես գործարանի կոնստրուկտորական բյուրոյի պետի տեղակալ: 1940-ից՝ ինքնաթիռաշինության փորձակոնստրուկտորական բյուրոյի գլխավոր կոնստրուկտոր: 1940-ին Մ-ի ղեկավարությամբ ստեղծվել է մեծ բարձրությունների վրա օդային մարտեր մղելու համար նախատեսված «ՄԻԳ-1» կործանիչը: Նույն թվականին այն մոդիֆիկացվել է, կիրառվել Հայրենական մեծ պատերազմում (1941—45): Մ. ՍՍՀՄ ռեակտիվ ավիացիայի պիոներներից է: Մ-ի ստեղծած Ե-266 կոնստրուկցիայի ռեակտիվ ինքնաթիռով (տես *Ավիացիա*) սահմանվել են մի շարք համաշխարհային ռեկորդներ: Եղել է ՍՍՀՄ III—VII գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: ՍՍՀՄ պետ. (1941, 1947, 1948, 1949, 1952, 1953) և լենինյան (1962) մրցանակների դափնեկիր է: Պարգևատրվել է Լենինի 6 և 4 այլ շքանշաններով:

*Գրկ.* Минаев А., Самолеты конструкции А. И. Микояна, «Вестник воздушного флота», 1951, № 7; Арзуманян А. М., Генеральный конструктор А. И. Микоян, М., 1961; Арлазоров М. С., Артем Микоян, М., 1978.

**ՄԻԿՈՅԱՆ** Սերգո Անաստասի (ծն. 5.6. 1929, Մոսկվա), սովետական միջազգայնագետ-պատմաբան: Պատմ. գիտ. դ-ր (1976): Անաստաս *Միկոյանի* որդին: ՍՄԿԿ անդամ 1953-ից: 1952-ին ավարտել է Մոսկվայի միջազգային հարաբերությունների ինստ-ը: 1960—69-ին աշխատել է ՍՍՀՄ ԳԱ Համաշխարհային էկոնոմիկայի և միջազգային հարաբերությունների ինստ-ում: 1970-ից «Լատինսկայա Ամերիկա» («Латинская Америка») ամսագրի գլխավոր խմբագիրն է: Զբաղվում է Ասիայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումների և միջազգային հարաբերությունների խնդիրներով: Մասնակցել է «Միջազգային հարաբերությունները երկրորդ համաշխարհային պատերազմից հետո» (հ. 1—3, 1963—65, ռուս.), «Տնտեսական զարգացման դիվանագիտություն» (1965, ռուս.) կոլեկտիվ աշխատությունների, հեղինակ է շուրջ 90 անուն գիտ. ուսումնասիրությունների:

Մասնակցել է միջազգային կոնֆերանսների և կոնգրեսների: Պարգևատրվել է Պերուի Հանրապետության «Ակնառու վաստակի համար» «Կոմանդոր» ի աստիճանի շքանշանով:

*Երկ.* США: государство, политика, выборы. М., 1969; Куба строит социализм, М., 1976.

**ՄԻԿՈՅԱՆ** Ստեփան Անաստասի (ծն. 12.7. 1922, Թիֆլիս), Սովետական Միության հերոս (1975), ավիացիայի գեներալ-լեյտենանտ (1980), վաստակավոր փորձարկող օդաչու: Անաստաս *Միկոյանի* որդին: Տեխ. գիտությունների թեկնածու: ՍՄԿԿ անդամ 1943-ից: Ավարտել է Կաչինսկի Ա. Ֆ. Մյասնիկյանի անվ. կարմրադրոշ ռազմաավիացիոն դպրոցը (1941), Ն. Ե. Ժուկովսկու անվ. ռազմաօդային ինժեներական ակադեմիան (1951): Որպես օդաչու, ավագ օդաչու, ապա օդակի հրամանատար մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին (Արևմտյան, Դոնի, Հյուսիս-արևմտյան ռազմաճակատներում, Մոսկվայի սահմանապահ զորքերի կազմում): 1951-ից՝ ռազմ. փորձարկող օդաչու, 1959-ից՝ կործանիչ ինքնաթիռների ավագ փորձարկող օդաչու:

Պարգևատրվել է Լենինի, Կարմիր դրոշի, Կարմիր աստղի 4 շքանշաններով:

*Վ. Մուրադյան*

**ՄԻԿՈՅԱՆ** Վլադիմիր Անաստասի (1924, Կիսլովոդսկ — 18.9.1942, Ստալինգրադ), օդաչու, ավիացիայի ավագ լեյտենանտ: Անաստաս *Միկոյանի* որդին: ՍՄԿԿ անդամ 1942-ից: Ա. Ֆ. Մյասնիկյանի անվ. կարմրադրոշ ռազմ. ավիացիոն դպրոցն ավարտելուց (1942) հետո կամավոր մեկնել է ռազմաճակատ: Մասնակցել է Ստալինգրադի մարտերին և զոհվել հերոսաբար՝ օդային անհավասար մարտում խփելով թշնամու 2 ինքնաթիռ: Հետմահու պարգևատրվել է Կարմիր դրոշի շքանշանով:

*Խ. Պետրոսյանց*

**ՄԻԿՈՅԱՆԻ ԱՆՎԱՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՐՏԻԶԱՆԱԿԱՆ ՋՈԿԱՏ**, կազմվել է 1943-ի սեպտեմբերին, Ուկրաինական ՍՍՀ Ժիտոմիրի մարզում, հայ ռազմագերիներից: Սեպտ. 16-ին, ֆաշիստական Գերմանիայի հավաքագրած, այսպես կոչված, հայկ. լեգիոնի 248 մարտիկներ, փախչելով Ժիտոմիրի մարզի Պոտիևկա ավանից, միացել են Ուկրաինական հեծյալ պարտիզանական միավորմանը: Սեպտ. 17-ի գիշերը հայ պարտիզանները հարձակվել և ջախջախել են Պոտիևկայի գերմ. կայազորը: Ջոկատի հրամանատարն էր լեյտենանտ Ա. Մ. Հովսեփյանը: Հրատարակել է «Մարտական թերթ» ձեռագիր օրգանը: Ուկրաինական հեծյալ պարտիզանական միավորման կազմում մասնակցել է Կիևի ազատագրմանը, ռազմերթ կատարել Ժիտոմիրի և Կիևի մարզերում: 1943-ի դեկտեմբեր — 1944-ի հունվարին ջոկատը անցել է ռազմաճակատի գիծը, Օվրուչ քաղաքից զենք և զինամթերք փոխադրել միավորման համար: Աչքի է ընկել Վորոտնևի և Մազերովի ազատագրման, Չիշկի, Ռուստավեչկո, Լիպնո գյուղերի, Սամբոր քաղաքի մատույցներում, Արևմտյան Բուգի, Լվով—Ռավա—Ռուսսկայա, Լվով—Պերեմիշլ երկաթուղագծերի ու խճուղիների հաղթահարման, Սան գետի (Լեհաստան) մոտ մղված մարտերում: Լեհաստանից վերադառնալով Լվովի մարզ՝ մասնակցել է *Բրոդի* քաղաքի ազատագրմանը: 1944-ի մարտին ջոկատը դուրս է եկել սովետական զորքերի թիկունքը և ավարտել պարտիզանական պայքարը: Այնուհետև ջոկատի մարտիկները կռվել են կարմիր բանակի շարքերում:

*Գրկ.* Ղ ա զ ա խ ե ց յ ա ն Վ. Ն., Միկոյանի անվան պարտիզանական ջոկատը, Ե., 1965: Ն ա ւ մ ո վ Մ. Ի., Անդունդի վրայով, Ե., 1971:

*Վ. Ղազախեցյան*

**ՄԻԿՈՌԻԶ** (< հուն. μύκης — սունկ և ῥίζα — արմատ), ս ն կ ա ր մ ա տ, սընկամարմնի և բարձրակարգ բույսի արմատի փոխշահավետ համակեցություն: Տարբերում են արտաքին՝ էկտոտրոֆ, և ներքին՝ էնդոտրոֆ Մ.: Էկտոտրոֆ Մ-ի դեպքում բույսերի (կաղնի, եղևնի, տխլենի, հնդկացորեն ևն) երիտասարդ արմատները սովորաբար ճյուղավորվում են, վերջավորությունները լայնանում, արմատների աճող մասերը շրջապատվում են սնկային հաստ, խիտ պատյանով, որից կեղևի մի քանի շերտի խորությամբ արմատի մեջ են թափանցում սնկի հիֆերը և առաջացնում, այսպես կոչված, Հարտիգի ցանց, ընդ որում արմատային մազիկները մահանում են: Էնդոտրոֆ Մ. բնորոշ է հապալասենուն, խոլորձին ևն, որոնց արմատները չեն ձևափոխվում, արմատային մազիկները սովորաբար չեն մահանում, սնկային պատյան և Հարտիգի ցանց չեն առաջացնում: Սնկի հիֆերը արմատի բջիջներում, երբեմն սերմերում կծիկներ են գոյացնում, որոնք հետագայում յուրացվում են բույսի կողմից: Էկտոտրոֆ Մ. են առաջացնում հիմենոմիցետները, գաստերոմիցետները, էնդոտրոֆ՝ ֆիկոմիցետները, անկատար բազիդիավոր սնկերը: Մ. բարերար ազդեցություն է ունենում բույսերի վրա: Սունկը մեծացնում է արմատի կլանող մակերեսը, հավանաբար քայքայում բույսի համար անմատչելի որոշ օրգ. միացություններ և արտադրում վիտամիններ ու աճումը խթանող նյութեր: Իր հերթին սունկը որոշ նյութեր է վերցնում արմատից:

Անտառատնկումների ժամանակ խորհուրդ է տրվում կատարել հողի միկոռիզացիա:

**ՄԻԿՍԱԹ** (Mikszáth) Կալման (1847—1910), հունգարացի գրող: Հունգարիայի ԳԱ պատվավոր անդամ (1889-ից): 1887-ից պառլամենտի դեպուտատ՝ կառավարական լիբերալ կուսակցության կողմից:



Կ. Միկսաթ

Գրական ասպարեզում հաջողության է հասել «Հայրենակից սլովակներ» (1881) և «Բարի պալոցներ» (1882) պատմվածքների ժողովածուներով, որոնցում համակրանքով ու հումորով է պատկերել գյուղացիների կենցաղը: Հրատարակվել են Մ-ի «Ասպետներ» (1897), «Բեստերցեի պաշարումը» (1896) նովելները և «Ընտրություններ Հունգարիայում» (1893—97), «Սարօրինակ ամուսնություն» (1900) երգիծական տարրեր բովանդակող վեպերը, որոնցում մերկացված է բուրժուա-ազնվականական հասարակությունը:

**ՄԻԿՐՈ...** (< հուն. μικρός— փոքր), 1. բարդ բառերի բաղադրիչ մաս, որ ցույց է տալիս որևէ բանի փոքր չափերը (ի հակադրություն *մակրո...* նախածանցի): Օրինակ, *միկրոկլիմա, միկրոօրգանիզմ, միկրոլուսանկար*: 2. Եակետային միավորից միլիոն անգամ փոքր միավորի անվանումը կազմելու համար գործածվող նախածանց: Կրճատ նշանակվում է *մկ* (միջազգային նշանակումը՝ μ): Օրինակ, 1 *մկվոլտ* (միկրովոլտ)= $10^{-6}$ *վոլտ*:

**ՄԻԿՐՈ- ԵՎ ՄԱԿՐՈԷԿՈՆՈՄԻԿԱ**, հասկացություններ, որ օգտագործվում են տնտեսական հետազոտությունների ոլորտներն ու տնտեսագիտության մեթոդները տարբերակելու համար: Մակրոէկոնոմիկան ուսումնասիրում է ժողովրդատնտեսական մասշտաբով դրվող պրոբլեմները՝ կապված հասարակական ամբողջական արդյունքի, ազգային եկամտի, վերջնական արդյունքի վերարտադրության, ինչպես նաև կուտակման ու սպառման ֆոնդերի, նյութական արտադրության և ծառայությունների ոլորտների, հասարակական արտադրության ստորաբաժանումների համամասնությունների ևն լուծման հետ: Մ. և մ. հասկացությունները ոչ միշտ են խիստ տարբերում: Մակրոէկոնոմիկան պայմանավորվում է տնտ. օբյեկտների հետազոտության մակրոմոտեցումով և իրականացվում մակրոմոդելավորման (ամբողջ ժողովրդատնտեսական պրոցեսների ամփոփ մոդելավորում), մակրոցուցանիշների, մակրոհամամասնությունների օգտագործման միջոցով: Միկրոէկոնոմիկան, հիմքում ունենալով տնտ. պրոցեսների ու երևույթների հետազոտման միկրոմոտեցումը, մշակում է տնտ. համակարգի տեղային (լոկալ) տարրերի մոդելները: Դրանք ժողովրդատնտեսական համալիրի կամ ձեռնարկության պլանավորման, կառավարման, տնտ. առանձին օղակների և սոցիալ-տնտեսական բջիջների մոդելներն են, որոնք հարաբերականորեն առանձնացված են իրացման միջավայրից: Ի տարբերություն մակրոէկոնոմիկայի, միկրոէկոնոմիկան բնութագրվում է մասնատված ցուցանիշներով: Երբեմն միկրոէկոնոմիկայի օբյեկտ են հանդիսանում տնտեսության վերացական մոդելները, որոնք կառուցվում են փոփոխուն մեծությունների և կառուցվածքային պարամետրերի առավելագույն հնարավոր ապախմբավորումով (դեզագրեգացիայով):

*Հ. Սարգսյան*

**ՄԻԿՐՈԱԼԻՔԱՅԻՆ ՌԱԴԻՈՍՊԵԿՏՐՈՍԿՈՊԻԱ**, տես *Ռադիոսպեկտրոսկոպիա*:

**«ՄԻԿՐՈԷԼԵԿՏՐԱՇԱՐԺԻՉ»**, գործարան Լենինականում, էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկություն: Հիմնադրվել է 1958-ին: Արտադրում է (ՍՍՀՄ-ում առաջինը) ՄԴ-54 և ՌԴ-09 տիպատեսակների փոքր հզորության էլեկտրաշարժիչներ: 1969-ից մտնում է «*Հայէլեկտրաշարժիչ*» արտադրական միավորման կազմի մեջ:

**ՄԻԿՐՈԷԼԵԿՏՐԱՖԻԶԻՈԼՈԳԻԱ**, *ֆիզիոլոգիայի* բաժին, ուսումնասիրում է կենդանի օրգանիզմի առանձին բջիջներում ու թելիկներում տեղի ունեցող էլեկտրական երևույթները: Մ-ի առաջընթացի համար կարևորագույն նշանակություն է ունեցել առանձին բջիջների էլեկտրական պոտենցիալների գրանցման, հատկապես միկրոէլեկտրոդների (ապակյա և մետաղյա) պատրաստման մեթոդների կատարելագործումը: Տարբերում են նեյրոնների էլեկտրական պոտենցիալների գրանցման ներ- և արտաբջջային եղանակներ: Ներբջջային եղանակով բոլոր բջիջներում հայտնաբերված է մշտապես գոյություն ունեցող պոտենցիալների անդրթաղանթային տարբերություն (թաղանթային կամ հանգստի պոտենցիալ), որը հասնում է մի քանի տասնյակ միլիվոլտի: Բջջում դրդումն առաջանում է հանգստի պոտենցիալը մինչև որոշակի կրիտիկական (շեմ-

քային) մեծության իջնելիս: Նշված դեպքում խիստ բարձրանում է բջջաթաղանթի իոնային թափանցելիությունը, որը հանգեցնում է թաղանթով այն իոնների հոսքի առաջացմանը, որոնց համար թաղանթը հանգստի վիճակում վատ թափանցելի է: Մի քանի միլիվայրկյան հետո լրիվ անհետանում է թաղանթի հանգստի պոտենցիալը, և ի հայտ է գալիս հակառակ ուղղված գործողության պոտենցիալ: Հետագայում տեղի են ունենում թաղանթի բևեռացման լրացուցիչ, բավական երկարատև, սակայն ոչ մեծ ամպլիտուդով փոփոխություններ՝ կապված բջջի վերականգնողական գործունեության և նրա դրդման փոփոխման հետ: Մ-ի մեթոդների օգնությամբ բացահայտվել են կենտրոնական նյարդային համակարգի ֆունկցիաների մի շարք օրինաչափություններ, որոնք օգտագործվում են նաև կլինիկական բժշկության մեջ: Տես նաև *Էլեկտրաֆիզիոլոգիա*: *Ռ. Քիմոնիդե*

**ՄԻԿՐՈԷԼԵԿՏՐՈՆԻԿԱ**, *էլեկտրոնիկայի* ճյուղ, որն զբաղվում է տրված հուսալիությամբ, շահագործական, գաբարիտային, էներգետիկ և արժեքային բնութագրերով, տարրային (տեխնոլոգիական) և ֆունկցիոնալ (ֆիզիկական) ինտեգրացման մեթոդներով ռադիոէլեկտրոնային բարդ սարքավորման ստեղծման պրոբլեմներով: Մ-ի առաջացումը XX դ. 60-ական թթ. սկզբին պայմանավորված է եղել էլեկտրոնային սարքավորման ֆունկցիաների անընդհատ բարդացումով, չափերի մեծացումով և հուսալիությանը ներկայացվող պահանջների աճով: Երևան եկան էլեկտրոնային սարքավորման ստեղծման կոնստրուկտիվ-տեխնոլոգիական նոր ուղղություններ՝ դրոշմամոնտաժ, միկրոմոդուլներ, ապա և ինտեգրալային սխեմաներ (պատրաստման խմբային մեթոդների հիման վրա): Օգտագործելով *պինդ մարմնի* և, մասնավորապես, *կիսահաղորդիչների ֆիզիկայի նվաճումները*՝ Մ. վերոհիշյալ պրոբլեմները լուծում է ոչ թե սոսկ էլեկտրոնային տարրերի չափերի փոքրացման ճանապարհով, այլ ստեղծելով կոնստրուկտիվորեն, տեխնոլոգիապես և էլեկտրականորեն կապակցված էլեկտրոնային կառուցվածքներ՝ ֆունկցիոնալ բլոկներ ու հանգույցներ: Դրանցում, ըստ սկզբունքային սխեմայի, կոնստրուկտիվորեն միավորված են միասնական տեխնոլոգիական պրոցեսով պատրաստված մեծ թվով մանրածավալ տարրեր՝ իրենց էլեկտրական միացումներով: Այդպիսի պրոցեսը, որը հնարավոր դարձավ կիսահաղորդչային սարքերի ստացման պլանարային պրոցեսի (1959) շնորհիվ, ենթադրում է նույնանման պայմաններում տեխնոլոգիական գործողությունների հաջորդական շարքով միաժամանակ անցած մեծ թվով (մինչև մի քանի հազար) միատեսակ էլեկտրական ֆունկցիոնալ հանգույցների համար նախատեսված սկզբնական ընդհանուր նախապատրաստվածքի (սովորաբար կիսահաղորդչային թիթեղի ձևով) կիրառում (նկ. 1): Մշակման պրոցեսում կիսահաղորդչային նյութի առանձին հատվածներին հաղորդվում են տվյալ հանգույցը կազմող տարրեր տարրերի ու դրանց միացումների հատկությունները: Ստացված մանրածավալ հանգույցը, որ առանձնացվում է թիթեղից և տեղավորվում պատյանի մեջ, կոչվում է ինտեգրալային միկրոսխեմա կամ ինտեգրալային սխեմա (ԻՍ): Այսպիսով, Մ-ում տարր հասկացությունը փոխարինվում է ԻՍ-ով, որը կարող է բաղկացած լինել 5 և ավելի տարրերից: ԻՍ բնութագրվում է ինտեգրացման մակարդակով և աստիճանով, որոնցից առաջինը որոշվում է ԻՍ կազմող պարզագույն տարրերի թվով, իսկ երկրորդը՝ այդ թվի կարգով (այսպես, 1-ին աստիճան՝ մինչև 10 տարր, 2-րդ աստիճան՝ 10-ից մինչև 100 տարր են): Այն ԻՍ, որում տարրերի թիվը 100-ից ավելի է, կոչվում է մեծ ԻՍ:




Նկ. 1. սիլիցիումային թիթեղ՝ p-անցուղային մետաղ-օքսիդ-կիսահաղորդչային մեծ ԻՍ-ի կառուցվածքներով: Աջից՝ 48 արտանցիչային մետաղախեցեղեն պատյանի մեջ (առանց կափարիչի) տեղադրված առանձին կառուցվածքով բյուրեղ՝ 3,3×5 *մմ* չափերով: Կառուցվածքը պարունակում է 8000 տրանզիստոր:

ԻՍ-երի արտադրության մեջ լայն տարածում է ստացել պլանարային-էպիտաքսիալ տեխնոլոգիան, որի հիման վրա պատրաստվում են ինտեգրացման ամենաբարձր մակարդակն ունեցող կիսահաղորդչային ԻՍ-եր. դրանք ունեն նաև այն առանձնահատկությունը, որ բոլոր ակտիվ և պասսիվ տարրերն ամփոփված են կիսահաղորդչային բյուրեղի ծավալում: ԻՍ-ի մեկ այլ տարատեսակը թաղանթային ԻՍ է, որը պատրաստվում է թաղանթային տեխնոլոգիայի հիման վրա (հաղորդիչ և դիէլեկտրիկ թաղանթները շերտածածկվում են նույն մեկուսիչ տակդիրը): Եթե թաղանթի հաստությունը 1 *մկմ*-ից պակաս է, ԻՍ կոչվում է բարակաթաղանթ, իսկ եթե 1 *մկմ*-ից ավելի է՝ հաստաթաղանթ: Թաղանթային ԻՍ և դրա վրա մոնտաժված անպատյան կիսահաղորդչային սարքերը միասին կոչվում են հիբրիդային ԻՍ (նկ. 2):




Նկ. 2. հիբրիդային ԻՍ. *1*. բարակաթաղանթ ռեզիստորներ, *2*. միացուցիչ հոսանքատար շավիղներ, *3*. կոնտակտային հարթակներ, *4*. անպատյան տրանզիստորներ, *5*. արտաքին կոնտակտային հարթակներ, *6*. պատյանի արտանցիչներ

Գոյություն ունեն նաև համատեղված ԻՍ-եր, որոնք պատրաստվում են կիսահաղորդչային և թաղանթային տեխնոլոգիայի եղանակներով: Ներկայումս առավել լայնորեն օգտագործվում են կիսահաղորդչային և հիբրիդային ԻՍ-երը: ԻՍ-ի բոլոր տեսակներն ըստ ֆունկցիոնալ հատկանիշի բաժանվում են 2 մեծ դասի՝ թվանշանային (տրամաբանական) և գծային: Թվանշանային ԻՍ կիրառվում է տրամաբանական սարքերում, մասնավորապես, էլեկտրոնային հաշվողական մեքենաներում:

ԻՍ-ի մյուս բոլոր տեսակները, որոնք նախատեսված են հիմնականում էլեկտրական ազդանշանների գծային փոխակերպման համար, պատկանում են գծային ԻՍ-երի դասին:

Մ-ի զարգացումն ընթանում է գլխավորապես երկու ուղղությամբ՝ 1. ԻՍ-ում ինտեգրացման մակարդակի և տեղավորման խտության մեծացում, 2. ֆիզիկական նոր սկզբունքների ու երևույթների որոնում՝ սխեմատեխնիկական և համակարգատեխնիկական ֆունկցիոնալ նշանակությամբ էլեկտրոնային սարքավորման ստեղծման համար: Առաջին ուղղությունը հնարավորություն կտա ստանալ ԻՍ-ի մեկ բյուրեղում հարյուր հազարավոր տարրերով (ենթամիկրոնային չափերի) բնութագրվող ինտեգրացման մակարդակ: Երկրորդ ուղղությունը թույլ կտա հրաժարվել ԻՍ-ի ինտեգրացման մակարդակի հետագա բարձրացումից (կոնստրուկտիվ բարդությունների պատճառով), պակասեցնել ցրվող հզորությունն ու արժեքը, մեծացնել սարքավորման արագագործությունը են: Վերջին ուղղությունն ընդհանուր առմամբ ստացել է ֆունկցիոնալ միկրոէլեկտրոնիկա անվանումը, այսինքն՝ համակցված միջավայրերի էլեկտրոնիկա՝ այնպիսի երևույթների օգտագործումով, ինչպիսիք են օպտիկական երևույթները պինդ մարմնում (օպտոէլեկտրոնիկա), էլեկտրոնային հոսքի և ձայնային ալիքների փոխազդեցությունը պինդ մարմնում (ակուստոէլեկտրոնիկա), ինչպես նաև գերհաղորդիչների, սեգնետոէլեկտրիկների հատկությունների օգտագործումով:

ԻՍ-երի մշակման ու արտադրության համար անհրաժեշտ են արտադրական հատուկ շենքեր (օրինակ, վակուումային հիգիենայի պահանջների համաձայն, 1 *լ* օդում 0,5 *մկմ* չափերի մի քանի փոշեհատիկից ավելի չպետք է լինի), բարդ ու բազմատեսակ սարքավորում, արտադրության բարձր մակարդակ: Այս բոլոր գործոնների ապահովումը պայմանավորեց Մ-ի սկզբնավորումը (60-ական թթ. 2-րդ կես) և արագ զարգացումը ՀՍՍՀ-ում: Հանրապետությունում թողարկվում են թաղանթային, հիբրիդային և կիսահաղորդչային ԻՍ-եր, ինչպես նաև դրանց արտադրության համար օգտագործվող ստուգիչ-հսկիչ սարքավորման որոշ տեսակներ (նկ. 3):

Երևանում գործում է միկրոէլեկտրոնիկայի գիտահետազոտական ինստ՝. իր փորձնական գործարանով:

*Գրկ.* Интегральные схемы, пер. с англ., М., 1970; Ефимов И. Е., Козырь И. Я., Основы микроэлектроники, М., 1975; Проектирование микроэлектронных цифровых устройств, под ред. С. А. Майерова, М., 1977.
*Օ. Խաչակով*





Նկ. 3. վերևում՝ ունիվերսալ ստուգիչ-չափիչ համակարգ՝ լազերային ճառագայթի օգնությամբ հիբրիդային ԻՍ-ի պասսիվ տարրերի ստուգման ու հարմարեցման համար: Ներքևում՝ ունիվերսալ ստուգիչ-չափիչ համակարգ՝ ռադիոհեռուստատեսային գծային ԻՍ-ի պարամետրերի վերջնական ստուգման համար: Երկու համակարգերն էլ կառավարվում են էլեկտրոնային հաշվողական մեքենայով:

**ՄԻԿՐՈԼՈՒՍԱՉԱՓ** (*միկրո...* և *լուսաչափ*), լուսապատկերի (սպեկտրոգրամ, ռենտգենոգրամ ևն) փոքր տեղամասերի *օպտիկական խտությունը* չափող սարք: Մ. օպտիկական մեկ այլ սարքի՝ դենսիտոմետրի տարատեսակն է, սակայն տարբերվում է դրանից մանրադիտակային օպտիկայի առկայությամբ, որը հնարավորություն է տալիս չափելու բավական փոքր (0,003—0,1 *մմ*²) տեղամասեր: Ժամանակակից զգայուն Մ-ով կարելի է չափել մինչև 3 միավորի հասնող օպտիկական խտություններ (0,02 միավորի ճշտությամբ): Ըստ աշխատանքի սկզբունքի՝ Մ-երը լինում են միաճառագայթանի, երբ չափվող տեղամասով անցած լուսային ազդանշանը համեմատվում է լույսի ուղղակի ազդանշանի հետ, և երկճառագայթանի, որն աշխատում է կոմպենսացման մեթոդով: Չափման արդյունքների գրանցման եղանակից կախված՝ Մ-երը լինում են ֆոտոէլեկտրական կամ տեսողական, ինչպես նաև չգրանցող (պատկերի յուրաքանչյուր տեղամասի առանձին չափումով, նկ.) և գրանցող, որը միանգամից գծում է օպտիկական խտության բաշխման կորը: Մ-ի հատուկ տեսակ է իզոլուսաչափը, որը գծում է հավասար օպտիկական խտության գծերը (իզոֆոտեր): Լայն տարածում ունի նաև միկրոսպեկտրալուսաչափը, որտեղ, ի տարբերություն սովորական Մ-ի, օգտագործվում են լույսի տարբեր մեներանգ ճառագայթներ:

*Գրկ.* Гороховский Ю. Н., Левенберг Т. М., Общая сенситометрия. Теория и практика, М., 1963. *Ծ. Նիկոյան*

Չգրանցող միկրոլուսաչափի օպտիկական սխեման. *1.* լամպ, *2.* լուսավորման դիաֆրագմա, *3.* միկրոսկոպիկ օբյեկտիվներ, *4.* օբյեկտ (սպեկտրոգրամ), *5.* ճեղք, *6.* օպտիկական սեպ, *7.* սելենային ֆոտոէլեմենտ, *8.* օպտիկական խտությունների սանդղակ, *9.* գալվանաչափի հայելի, *10.* խտությունների սանդղակի փայլատապակի




**ՄԻԿՐՈԿԱՌՈՒՑՎԱԾՔ** մետաղի, մետաղների և համաձուլվածքների կառուցվածք, որը տեսանելի է մանրադիտակի օգնությամբ: Օպտիկական մանրադիտակով հնարավոր է տարբերել մինչև 0,2 *մկմ*, իսկ էլեկտրոնայինով՝ 0,5—1 *նմ* չափի թերաբյուրեղներ: Մ-ի բնույթը (բյուրեղների չափեր, ձև և փոխադարձ դասավորություն) մեծ չափով ազդում է մետաղների և համաձուլվածքների հատկությունների վրա:

**ՄԻԿՐՈԿԱՐԾՐՈՒԹՅՈՒՆ**, նյութի առանձին հատվածների *միկրոկառուցվածքի* կարծրություն: Չափվում է ալմաստե բուրգը սովորաբար հարթ մակերևույթի մեջ ներճնշելով: Մ. հնարավորություն է տալիս գնահատել շատ բարակ մակերևութային շերտերի, պատվածքների, ժամացույցների և սարքերի փոքր դետալների, բարակ մետաղալարերի ու շատ փխրուն մարմինների (ապակի, արծն ևն) առանձին կառուցվածքային բաղադրամասերի հատկությունները, որոնք սովորական մեթոդներով կարծրությունը որոշելու դեպքում ճաքճքում են:

**ՄԻԿՐՈԿԼԻՄԱ** (*միկրո....* և *կլիմա*), 1. օդի գետնամերձ փոքր շրջանի կամ տեղամասի կլիմա: Զգալիորեն փոխվում է հիմնականում փոքր տարածություններ (հարյուրավոր կամ նույնիսկ տասնյակ մետրերի) վրա, կախված գործող շերտի հատկություններից (օրինակ, անտառի առանձին բացատների, դաշտերում եղած պուրակների, փոքրիկ ջրամբարների, բլուրների ևն): Խոշոր գործնական նշանակություն ունի գյուղատնտեսության և քաղաքաշինության համար: 2. Փակ շինություններում (տներ, ջերմոցներ ևն) ստեղծվող կլիմա, արտաքին անբարենպաստ ներգործությունից պաշտպանվելու և հարմարավետության զոնա ստեղծելու համար:

**ՄԻԿՐՈԿՐԻՍՏԱԼՈՍԿՈՊԻԱ**, միկրոբյուրեղադիտում, որակական միկրոքիմիական վերլուծության եղանակ: Հիմնված է բնորոշ բյուրեղներ առաջացնող և զգայուն քիմ. ռեակցիաների վրա: Սովորաբար ռեակցիան իրականացնում են առարկայական ապակու վրա, հետազոտվող լուծույթի կաթիլում: Բյուրեղները զննում են 80—200 անգամ խոշորացնող, երբեմն նաև բևեռացնող, ուլտրամանուշակագույն կամ էլեկտրոնային մանրադիտակով: Մ-ով կարելի է հայտնաբերել մինչև $10^{-8}$ *գ* նյութ: Կիրառում են փոքր քանակներով (0,01—0,001 *գ*) նմուշները հետազոտելիս:

**ՄԻԿՐՈՀԵՌԱԽՈՍԱՓՈՂ**, *հեռախոսային ապարատի* հանգույց, որը օգտագործման հարմարավետության համար միավորում է միկրոֆոնը և հեռախոսը, սովորաբար կոչվում է հեռախոսափող:

**ՄԻԿՐՈՄԵՏՐ** (*միկրո...* և ... *մետր*), չափիչ սարք, որում փոխակերպիչ մեխանիզմը պտուտակ-մանեկ միկրոզույգն է: Ըստ նշանակման տարբերում են հարթ (շինվածքների արտաքին չափսերը չափող), թերթային (թիթեղների և ժապավենների հաստությունը չափող), խողովակային (խողովակների պատերի հաստությունը չափող), ատամնաչափման (ատամնանիվների ընդհանուր նորմալի երկարությունը չափող) Մ-եր: Փափուկ նյութերից դետալների, ստանդարտ պարուրակների, գնդային մակերևույթների չափման համար պատրաստում են հարթ, պարուրակային, գնդիկային ներդրակներով Մ-եր: Բաժանման արժեքը 0,001—0,01 *մմ* է, չափման սահմանը՝ մինչև 2000 *մմ*:

**ՄԻԿՐՈՄԵՏՐ** աստղագիտություն, օժանդակ սարք աստղագիտական խողովակների օպտիկական համակարգի կիզակետային հարթությունում փոքր հեռավորություններ չափելու համար: Չափումները կատարվում են, մեծ մասամբ, թվանշված թմբուկով սարքավորված միկրոմետրիկ ճշգրիտ պտուտակի օգնությամբ, որի պտույտը տեղաշարժում է չափող թելիկներով շրջանակը (նկ.): Այս սկզբունքով է կառուցված թելիկավոր Մ.: Լինում են դիրքային, գրանցող, պարույրային Մ-եր: Կիրառվում են *միջօրեական շրջանակներում*, *պասաժներում* և վիզուալ դիտումների այլ գործիքներում, ինչպես նաև երկնքի լուսանկարների ու սպեկտրոգրամների չափման լաբորատոր սարքերում:

**ՄԻԿՐՈՆ** (< հուն. μικρόν — քիչ, չնչին), երկարության արտահամակարգային միավոր, հավասար է $10^{-6}$ *մ* կամ $10^{-3}$ *մմ*: Նշանակվել է *մկ* (միջազգային նշանակումը՝ μ): Չափերին և կշիռներին նվիրված XIII գլխավոր կոնֆերանսը (1967) որոշում է ընդունել հրաժարվել «Մ.» անվանումից, և այդ միավորը, ըստ ԳՈՍՏ 7663—55-ի, ինչպես նաև բազմապատիկ միավորների անվանումների կազմման կանոնների, պետք է կոչվի *միկրոմետր* (*մկմ*):

**ՄԻԿՐՈՆԵԶԱՑԻՆԵՐ**, ազգակից ժողովուրդների խումբ (Կարոլինյան կղզիների տրուկցիները և պոնապեանցիները, Մարիանյան կղզիների չամարրոները, մարշալցիները, նաուրուացիները ևն), Միկրոնեզիայի հիմնական բնակչությունը: Թիվը՝ ավելի քան 200 հզ. (1970): Բացի դրանից, մոտ 4 հզ. Մ. բնակվում են Մելանեզիայում: Մ-ի մարդաբանական տիպը ձևավորվել է մելանեզացիների, պոլինեզացիների և ինդոնեզացիների միաձուլումից: Խոսում են մալայա-պոլինեզական խմբին պատկանող լեզուներով: Մ-ի մոտ քրիստոնեությունը (առավելապես՝ բողոքականությունը) զուգակցվում է հնագույն տեղական հավատալիքների հետ:

Հիմնականում զբաղվում են ձկնորսությամբ և մրգատու ծառեր (գլխավորապես՝ կոկոսյան արմավենի) աճեցնելով: Հողագործությունը թույլ է զարգացած: Մինչ գաղութատիրությունը (XVI—XVII դդ.) հողը տնօրինում էր տոհմային վերնախավը: Որոշ կղզիներում ձևավորվել էին դասակարգային հարաբերություններ: Զգալի զարգացման էր հասել առևտրական փոխանակությունը (իբրև դրամ ծառայել են խեցիներն ու քարե սկավառակները): Գաղութարարների տիրապետության հետևանքով խիստ կրճատվեց Մ-ի թիվը: Մարիանյան կղզիներում, դեռևս XVII դ. Մ. գրեթե գլխովին ոչնչացվեցին կամ խառնվեցին եկվորներին: Մ. մղում են ազգային-ազատագրական պայքար: 1968-ին Նաուրու կղզին դարձավ անկախ պետություն:

**ՄԻԿՐՈՆԵԶԻԱ** (*միկրո*... և հուն. νησος— կղզի), փոքր կղզիների հիմնական խմբերից (մոտ 1500 կղզի) Օվկիանիայում: Խաղաղ օվկիանոսի արևմտյան մասում, Ընդգրկում է ԱՄՆ-ի խնամարկյալ Մարիանյան, Կարոլինյան և Մարշալյան կղզիները, Նաուրու (1968-ից անկախ պետություն), Օշեն և Ջիլբերտի (1979-ից մտել են Կիրիբատի պետության կազմի մեջ) կղզիները են: Տարածությունը 2622 *կմ²* է, բնակչությունը՝ ավելի քան 118 հզ. (1980, հիմնականում՝ *միկրոնեզացիներ*): Կղզիների մեծ մասը կորալային ատոլներ են, մնացածներն ունեն հրաբխային ծագում: Ամենախոշորը Գուամ կղզին է (ԱՄՆ-ի տիրույթ):

Կլիման հասարակածային և մերձհասարակածային է: Հրաբխային կղզիները ծածկված էին մշտականաչ անտառներով, որոնք փոխարինվել են երկրորդական մացառուտներով ու սավաննաներով: Կան բոքսիտների ու ֆոսֆորիտների հանքավայրեր: Զբաղվում են ձկնորսությամբ, կոկոսյան արմավի, բանանի, ցիտրուսային կուլտուրաների մշակությամբ: Մի քանի կղզիներում կան ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի ռազմ. բազաներ:

**«ՄԻԿՐՈՇԱՐԺԻՉ»**, գործարան Գորիսում, էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկություն: Հիմնադրվել է 1959-ին: Արտադրում է փոքր հզորության էլեկտրաշարժիչներ և առաստաղային օդափոխիչներ: 1969-ից մտնում է «*Հայէլեկտրաշարժիչ*» արտադրական միավորման կազմի մեջ:

**ՄԻԿՐՈՇՐՋԱՆ**, բնակավայրերի կառուցապատման ժամանակակից քաղաքաշինական ամենափոքր միավորը: Մ-ի կազմի մեջ բացի բնակելի շենքերից մտնում են նաև մսուր-մանկապարտեզներ, հանրակրթական դպրոցներ, ամենօրյա անհրաժեշտության մթերային և արդ. ապրանքների խանութներ, մշակութային, մարզական, կենցաղային և վարչական սպասարկման հիմնարկություններ: Մ-ի բնակիչների թիվը կարող է լինել 2—6 հզ-ից (գյուղական բնակավայրերում) մինչև 16 հզ. (խոշոր քաղաքներում): Մ-ի նախագծային և տեսական հիմունքները մշակվել են ՍՍՀՄ-ում, դեռևս 1920-ական թթ. և նոր թափ ստացել ետպատերազմյան տարիներին՝ ավերված քաղաքների վերականգնման ու նոր բնակելի զանգվածների շինարարության ընթացքում: Մ-ի ծավալատարածական կոմպոզիցիան սերտորեն շաղկապվում է բնակելի տների տիպերի հետ, որոնք հաճախ մշակվում են բլոկ-սեկցիաների ձևով՝ ավելի ճկուն բնույթ հաղորդելով կառուցապատմանը: Օրինակելի Մ-ներ են կառուցվել Բաքվում, Մագնիտոգորսկում, Մոսկվայում, Լենինգրադում, Մինսկում, Վիլնյուսում և այլուր:

Երևանում առաջին Մ. սինթետիկ կաուչուկի գործարանի բնակելի ավանն է (1932, ճարտ. Գ. Քոչար, Մ. Մազմանյան)՝ բաղկացած բնակելի շենքերից (3—4-հարկանի) և բնակիչների սպասարկումն ապահովող հիմնարկներից: Այդ սկզբունքով են կառուցվել Երևանի Աջափնյակի և Նորքի բնակելի զանգվածները (ճարտ. Մ. Մազմանյան, Ց. Չախալյան), Ավանի բնակելի շրջանը (ճարտ. Գ. Մուշեղյան, Կ. Մարտիրոսյան), Կիրովականի Դիմաց թաղամասը (ճարտ. Ա. Թերզիբաշյան), Լենինականի Հյուսիսային բնակելի շրջանը (ճարտ. Փ. Մանուկյան) են:

*Մ. Միքայելյան*

**ՄԻԿՐՈՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹԵՐ**, *միկրոտարրեր* պարունակող *պարարտանյութեր*: Ստորաբաժանվում են երկու խմբի՝ միամիկրոպարարտանյութեր (բորային, պղնձային, մանգանային, մոլիբդենային են) և բազմամիկրոպարարտանյութեր (պարունակում են 2 և ավելի միկրոտարր): Որպես Մ. օգտագործվում են միկրոտարրերի աղերը, արդ. թափոնները (խարամ, շլակ են), ֆրիտները (աղերի և ապակու համաձուլվածքները), խելատները (օրգ. նյութերի և մետաղների միացությունները): Մ. լայնորեն օգտագործվում են հատկապես 1940-ից հետո (մասնավորապես ԱՄՆ-ում, Մեծ Բրիտանիայում, Ֆրանսիայում, Շվեդիայում, ԳՖՀ-ում, ԳԴՀ-ում, Լեհաստանում, Բուլղարիայում, Իտալիայում, Ճապոնիայում): ՍՍՀՄ-ում կիրառվում են Մ-ի հետևյալ տեսակները՝ բ ո ր ա յ ի ն Մ.՝ բորադատոլիտ (պարունակում է 2,0—2,5% B), մանգանի բորատ (1,5—2% B), բորի սուպերֆոսֆատ (0,1—0,5% B), բորաթթու (16—17% B), բորաքս (11,3% B) են: Առավել արդյունավետ են կրացած և ավազային ճմապոդզոլային, ճմագլեացված հողերում՝ շաքարի ճակնդեղի, վուշի, առվույտի, հնդկացորենի, արևածաղկի, հատիկաընդեղենի, բանջարանոցային բույսերի պարարտացման համար: ՀՍՍՀ-ում նպատակահարմար է օգտագործել Զանգեզուրի և հս-արլ. շրջանների անտառային դարչնագույն, տափաստանային և բոլոր գոտիների գետահովտային հողերի պարարտացման համար: Պ ղ ն ձ ա յ ի ն Մ., կիրառվում են պղնձի սուլֆատի (պարունակում է մոտ 23% Cu), պիրիտային հանքամնացորդի (0,3—0,5% Cu) ձևերով, հիմնականում տորֆային և ավազային ճմապոդզոլային հողերում՝ հացահատիկային, բանջարանոցային բույսերի, կարտոֆիլի, վուշի են ցանքերում: Մ ա ն գ ա ն ա յ ի ն Մ.՝ մանգանի սուպերֆոսֆատ (պարունակում է 2—3% MnO), Mn պարունակող պատրաստուկ (3,5—4,5% MnO), մանգանի խարամ (12—22% Mn), մանգանի ֆրիտներ (7—21% MnO) են, օգտագործվում են սևահողերում, ճմակարբոնատային, անտառային մոխրագույն հողերում: Ց ի ն կ ա յ ի ն Մ.՝ ցինկի սուլֆատ (մոտ 25% Zn), պղնձաձուլական գործարանների թափոններ, ցինկի խելատներ ու ֆրիտներ են, արդյունավետ են չեզոք ու հիմնային ռեակցիա ունեցող կարբոնատային և կրացված հողերում: Մ ո լ ի բ դ ե ն ա յ ի ն Մ.՝ մոլիբդեն պարունակող փոշի, մոլիբդենի սուպերֆոսֆատ են, օգտագործվում են ճմապոդզոլային թթու, անտառային մոխրագույն հողերում, կրազուրկ սևահողերում: ՀՍՍՀ-ում արդյունավետ են լեռնամարգագետնային, մարգագետնատափաստանային հողերում և լեռնային սևահողերում: Կ ո բ ա լ տ ա յ ի ն Մ.՝ կոբալտի սուլֆատ, նպատակահարմար է օգտագործել ճմապոդզոլային, հատկապես ավազային և ճահճային հողերում, որտեղ մշակվում են թիթեռնածաղկավոր բույսեր:

Մ. բարելավում են բերքի որակը, բարձրացնում բերքատվությունը, արագացնում հասունացումը, ավելացնում շաքարի, վիտամինների, յուղերի պարունակությունը պտուղներում ու սերմերում, կանխում բույսերի հիվանդությունները, բարձրացնում ցրտա-չորադիմացկունությունը են: Մ-ի նկատմամբ գյուղատնտ. բույսերի պահանջը կախված է դրանց կենսաբանական առանձնահատկություններից և միկրոտարրերի (բույսի համար մատչելի ձևերի) պարունակությունից: Պարարտացման հիմնական ձևերն են՝ սերմերի նախացանքային մշակում Մ-ով, արտարմատային սրսկումներ են: Մ-ի չափաքանակը 0,5—5 *կգ/հա* է: Որոշ Մ. օգտագործվում են մակրոպարարտանյութերի հետ:

*Ն. Ավագյան*

**ՄԻԿՐՈՊԻԼԵ** (*միկրո*... և հուն. πύλη — դարպաս, անցք), 1. միջատների, սարդակերպերի, որոշ փափկամորթների, ձկների ձվի թաղանթի վրա գտնվող մեկ կամ մի քանի անցք, որոնց միջով սպերմատոզոիդը թափանցում է ձվաբջջի մեջ: 2. Փ ո շ ե մ ու տ ք, ս ե ր մ ն ա մ ու տ ք, բարձրակարգ սերմնավոր բույսերի սերմնաբողբոջների գագաթնային անցք, որով փոշոտման ժամանակ ներս է մտնում փոշեխողովակը:

**ՄԻԿՐՈՌԵԼԻԵՖ**, *ռելիեֆի* ձևեր, որոնք հանդիսանում են Երկրի տարբեր տեղամասերի մակերևույթի խոշոր ձևերի մանրամասերը, որոնց հարաբերական բարձրությունը չի անցնում մի քանի մետրից (օրինակ, բլուրներ, փոքր ձագարներ, ավազաթմբեր, տափաստանային ափսեներ են): Մ-ի ծագումը հիմնականում պայմանավորված է արտածին գործոններով:

**ՄԻԿՐՈՍՈՄՆԵՐ** (*միկրո*... և հուն. σῶμα— մարմին), էնդոպլազմային ցանցի հատվածներ (մինչև 1000 Å տրամագծով բշտիկներ). առաջանում են բույսերի և կենդանիների հյուսվածքների հոմոգենացման պրոցեսում բջիջների քայքայումից: Տարբերում են հ ա ր թ և ա ն հ ա ր թ մակերևույթով Մ.: Մինչև բջջային հոմոգենատների բաժանման տեխնիկան կատարելագործելը Մ-ի ֆրակցիայի մեջ մտնում էին նաև *միտոքոնդրիաները*:

**ՄԻԿՐՈՍՈՑԻՈԼՈԳԻԱ** (*միկրո*... և *սոցիոլոգիա*), XX դարի 20-ական թթ. ձևավորված բուրժուական սոցիոլոգիայի բնագա-

վառներից, որն ուսումնասիրում է անձնավորությունը և հասարակական *փոքր խմբերը* որպես միջանձնային փոխգործողության արդյունք: Այս առումով, Մ. մերձենում է *սոցիալական հոգեբանությանը*: Մ-ին են վերաբերում Կ. Լևինի «խմբային դինամիկայի» տեսությունը, Ջ. *Մորենոյի սոցիոմետրիան* ևն, որոնցում ապարդյուն փորձեր են կատարվում միկրոսոցիոլոգիական օրինաչափություններով բացատրել հասարակական երևույթներն ընդհանրապես: Չնայած նման ծայրահեղություններին, Մ-ի որոշ տեսական և մեթոդաբանական տարրեր կիրառվում են արդի սոցիոլոգիայում:

**ՄԻԿՐՈՍՊՈՐԱՆԳԻՈՒՄ**, տես *Սպորանգիում*:

**ՄԻԿՐՈՍՊՈՐՆԵՐ** (*միկրո...* և հուն. *σπορά* — սերմ), բարձրակարգ տարասպոր բույսերի (պտերանմաններ, սերմնավորներ) մանր սպորներ: Հապլոիդ են, մեծ քանակությամբ գոյանում են միկրոսպորանգիումներում: Պտերանմանների Մ-ից առաջանում են սեռական օրգաններ՝ անթերիդիումներ ունեցող, խիստ ռեդուկցված արական նախածիլերը, որոնք քամու, ջրի ևն միջոցով հասնում են իգական նախածիլերին, որտեղ սպերմատոզոիդներն իրականացնում են *բեղմնավորումը*: Սերմնավոր բույսերի Մ. են արական նախածիլերին հոմոլոգ փոշեհատիկները:

**ՄԻԿՐՈՏԱՐՐԵՐ**, օրգանիզմներում փոքր (սովորաբար տոկոսի հազարերորդական մասեր) քանակներով պարունակվող և դրանց բնականոն կենսագործունեության համար անհրաժեշտ քիմիական տարրեր: Մ. են նաև հողում, լեռնային ապարներում, հանքանյութերում, ջրերում պարունակվող քիմ. որոշ տարրեր: Մակրոտարրերից զատելու քանակական ճշգրիտ սահմաններ չկան: Հողի և լեռնային ապարների որոշ մակրոտարրեր (Fe, Al ևն) կենդանիների, բույսերի, մարդկանց համար Մ. են:

Կենդանի օրգանիզմներում առանձին Մ. հայտնաբերվել են դեռևս XIX դ. սկզբում: Վ. Ի. *Վերնադսկին* հաստատել է, որ Մ. կենդանի օրգանիզմների պատահական բաղադրամասեր չեն և *կենսոլորտում* բաշխվում են օրինաչափորեն: Բույսերի և կենդանիների բնականոն կենսագործունեության համար 30-ից ավելի Մ. համարվում են անհրաժեշտ: Դրանց մեծ մասը մետաղներ են (Fe, Cu, Zn, Mn, Mo, Co ևն), մյուս մասը՝ ոչ մետաղներ (J, Se, Br, F, As): Օրգանիզմում Մ. մտնում են կենսաբանորեն ակտիվ տարրեր միացությունների՝ ֆերմենտների, վիտամինների, հորմոնների, շնչառական պիգմենտների բաղադրության մեջ և ներգործում նյութափոխանակության պրոցեսների ակտիվության, իսկ որոշ Մ.՝ աճի (Mn, Zn, J), արյունաստեղծման (Fe, Cu, Co), հյուսվածքային շնչառության (Cu, Zn), բազմացման (Mn, Zn՝ կենդանիների, Mn, Cu, Mo՝ բույսերի համար), ներբջջային փոխանակության վրա ևն:

Հողերում Մ. մտնում են տարբեր միացությունների կազմի մեջ, որոնց մեծ մասն անլուծելի կամ դժվարալույծ են և բույսերին քիչ մատչելի: Մ-ի շարժունակության և մատչելիության (բույսերի համար) վրա ազդում են հողի թթվայնությունը, խոնավությունը, օրգ. նյութերի պարունակությունը ևն: Տարբեր հողերում Մ-ի պարունակությունը նույնը չէ. օրինակ, B-ի և Cu-ի շարժուն ձևերով հարուստ են սևահողերը, աղքատ՝ ճմապոդզոլային հողերը: Mo-ի պակաս նկատվում է թթվն, Co-ի՝ թթու ճմապոդզոլային, Mn-ի՝ սևահողերում, Zn-ի՝ գորշ և շագանակագույն հողերում: Հողերում Մ-ի պակասի կամ ավելցուկի հետևանքով դրանք պակասում կամ ավելանում են բուսական և կենդանական օրգաններում: Այս դեպքում կատարվում են կուտակման բնույթի փոփոխություններ, կենսք. ակտիվ նյութերի սինթեզի արագացում կամ թուլացում, միջանկյալ փոխանակության պրոցեսների վերակառուցում, նոր հարմարվողականության մշակում, կամ զարգանում են խախտումներ, ապա նաև դրանց հետևանքով տեղաճարակային հիվանդություններ: Այսպես, կենդանիների տեղաճարակային ատակսիան առաջանում է Cu-ի, խպիպը՝ J-ի, ակոբալտոզները՝ Co-ի պակասից, բոռային էնտերիտները, բարդացած թոքաբորբով (ոչխարների մոտ), B-ի ավելցուկից ևն: Մ-ի պակասը կամ ավելցուկը վնասակար է նաև բույսերի համար, օրինակ, ծաղկակաղամբի և որոշ ընդավորների ծաղիկների առաջացումը ընկճվում է Mo-ի, հացահատիկների, ցիտրուսային և այլ բույսերի պտուղների կազմավորումը խանգարվում է Cu-ի պակասից, իսկ B-ի պակասի դեպքում թերզարգացած է ծաղկակալը, բացակայում է ծաղկումը (գետնանուշ), մահանում են կոկոնները (խնձորենի, տանձենի), չորանում են ծաղկաբույլերը (խաղող) և պտուղները (գետնանուշ, կաղամբ): B-ի ավելցուկից բույսերը վարակվում են արմատավզիկի փտախտով, քլորոզով, զանգվածաբար առաջանում են տեղային նորագոյացություններ:

Այն շրջաններում, որտեղ առանձին Մ-ի կոնցենտրացիան չի հասնում ստորին շեմքային սահմաններին, հնարավոր է կանխել և բուժել տեղաճարակային հիվանդությունները՝ կերաբաժնին ավելացնելով համապատասխան Մ.: Նման դեպքերում բույսերի համար կիրառում են *միկրոպարարտանյութեր*:

Մարդու օրգանիզմ Մ. մուտք են գործում բուսական և կենդանական ծագման սննդանյութերի հետ: Խմելու ջուրը բավարարում է Cu, Zn, Mn, Co, Mo-ի նկատմամբ մարդու պահանջի միայն 1—10%-ը և առանձին Մ-ի (F, Sr) գլխավոր աղբյուրն է: Տարբեր Մ-ի պարունակությունը սննդաբաժնում կախված է մթերքների տեսականազմից և դրանց ստացման վայրի երկրաքիմիական պայմաններից: Մարդու տեղաճարակային հիվանդությունների պատճառագիտական գործոն կարող են համարվել միայն J, որի պակասը նպաստում է խպիպի առաջացմանը, և F, որի ավելցուկից առաջանում է ֆլյուորոզ, պակասից՝ ոսկրափուտ:

Մ. օրգանիզմում բաշխվում են անհավասարաչափ: Դրանց բարձր կուտակվածությունը որևէ օրգանում կապված է տարրի ֆիզիոլոգիական դերի և օրգանի առանձնահատուկ գործունեության հետ: Տարիքի հետ շատ Մ-ի (Al, Ti, Cl, Pb, F, Sr, Ni) պարունակությունը մեծանում է, աճի և զարգացման շրջանում՝ համեմատաբար ավելի արագ, իսկ 15—20 տարեկանում՝ դանդաղ, կամ դադարում է: Կան տվյալներ, որ Co, Cu, Ni-ի պարունակությունն արյան մեջ և Sr-ինը՝ կմախքում 50—60 տարեկան հասակում ավելի պակաս է, քան 20—25 տարեկանում: Մ-ի բացարձակ քանակը օրգաններում և հյուսվածքներում էականորեն կարող է տատանվել, սակայն արյան մեջ որոշ տարրերի կոնցենտրացիան համեմատաբար հաստատուն է (Co՝ 4—8 *մկգ*%, Cu 80—140 *մկգ*%, Fe՝ 45—60 *կմգ*% ևն): Այլ Մ-ի՝ Sr, Pb, F քանակը կարող է նկատելիորեն տատանվել: Արյան մեջ Մ-ի մեծ մասը գտնվում է սպիտակուցների հետ կապված վիճակում, որոշ տարրեր՝ իոնների ձևով: Ըստ օրգանիզմի կենսագործունեության համար ունեցած նշանակության Մ. բաժանում են անհրաժեշտի (Co, Fe, Cu, Zn, Mn, J, F, Br) և հավանականորեն անհրաժեշտի (Al, Sr, Mo, Se, Ni): Bi-ի, Ag-ի, Au-ի, Nb-ի, Zr-ի, La-ի և հյուսվածքներում հայտնաբերված մի քանի այլ Մ-ի դերը դեռևս բացահայտված չէ: Մ-ի ֆիզիոլոգիա-հիգիենային բնութագիրը տրված է աղյուսակում, որտեղ ներկայացված է Մ-ի «բիոտիկ» քանակի (բնության մեջ հանդիպող քանակություններ) արդյունավետությունը: Այս սահմաններում միևնույն տարրի ազդեցության բնույթը կարող է էականորեն փոխվել. օրինակ, Mn-ի փոքր քանակությունը խթանում է արյունաստեղծումը և իմունոռեակտիվությունը, մեծ քանակությունը՝ ընկճում: Խմելու ջրում F-ի կոնցենտրացիան մինչև 1—1,5 *մգ/լ* հասցնելիս ոսկրափուտով հիվանդությունը նվազում է, իսկ մինչև 2—3 *մգ/լ* բարձրացնելու դեպքում՝ զարգանում է ֆլյուորոզ ևն: Օրգանիզմում փոխազդեցություն է նկատվում նաև իրենց՝ Մ-ի միջև (Co արդյունավետ է ազդում արյունաստեղծման վրա միայն օրգանիզմում բավարար քանակով Fe և Cu-ի առկայության դեպքում, Mn բարձրացնում է Cu-ի յուրացումը ևն): Մ-ի օգտագործումը կլինիկական բժշկության մեջ առայժմ սահմանափակ է: Արդյունավետ է Co, Fe, Cu, Mn-ի պատրաստուկների կիրառումը անեմիայի որոշ ձևերի դեմ պայքարելու գործում: Որպես դեղամիջոցներ օգտագործում են նաև Br և J: Մ-ի կիրառման ասպարեզում մեծ են հիգիենայի հաջողությունները՝ աղի կամ հացի յոդացումը տեղաճարակային խպիպի կանխման համար, ջրի ֆտորացումը՝ ոսկրափուտով հիվանդության նվազեցման համար, ապաֆտորացումը, երբ բնական ջրերում F շատ է ևն: Տես նաև առանձին տարրերի մասին հոդվածները (օրինակ, *Բորը* օրգանիզմում, *Յոդը* օրգանիզմում): Աղյուսակը տես 548-րդ էջում:

**ՄԻԿՐՈՏՐՈՆ** [*միկրո...* և (էլեկ)տրոն], էլեկտրոնային ցիկլոտրոն, թեթև տարրական մասնիկների ցիկլիկ ռեզոնանսային *արագացուցիչ*: Աշխատանքի հիմքում ընկած է սովետական ֆիզիկոս Վ. Ի. Վեքսլերի գաղափարը, ըստ որի՝

Կարևորագույն անփոխարինելի միկրոտարրերի հիմնական ֆիզիոլոգիահիգիենային բնութագիրը

| Միկրո-տարրը | Պարունակությու-նը ջրում (սովո-րական), *մգ/լ* | Օրգանիզմ մտնե-լու հիմնական աղբյուրները | Պարունակու-թյունը օրվա սննդաբաժ-նում, *մգ* | Օրվա պահանջը (*մգ*), հյուս-վածքներ և օրգաններ, որոնց մեջ կուտակվում է տարրը | Ֆիզիոլոգիական դերը և կենսաբանական արդյունավետությունը |
|---|---|---|---|---|---|
| Al | 0—0,1 | Հացամթերքներ | 20—100 | 2—50, Լյարդ, գլխուղեղ, ոսկր | Նպաստում է էպիթելային, շարակցական, ոսկրային հյուսվածքների զարգացմանը և վերականգնմանը, ներգործում մարսողական գեղձերի և ֆերմենտների ակտիվության վրա |
| Br | 0—0,25 | Հացամթերքներ, կաթ | 0,4—1,0 | 0,5—2,0, Գլխուղեղ, վահանաձև գեղձ | Մասնակցում է նյարդային համակարգի կարգավորմանը, ազդում սեռական և վահանաձև գեղձերի ֆունկցիաների վրա |
| Fe | 0,01—1,0 | Հացամթերքներ, միս, մրգեր | 15—40 | 10—30, Էրիթրոցիտ, փայծաղ, լյարդ | Մասնակցում է արյունաստեղծմանը, շնչառությանը, իմունակենսաբանական և օքսիդավերականգնման ռեակցիաներին, անբավարարության դեպքում առաջանում է անեմիա |
| J | 0—0,3 | Կաթ, բանջարեղեն | 0,04—0,2 | 1,1—1,3, Վահանաձև գեղձ | Անհրաժեշտ է վահանաձև գեղձի գործունեության համար, անբավարարությունը նպաստում է տեղաձարակային խպիպի տարածմանը |
| Co | 0,01—0,1 | Կաթ, հացամթերքներ, բանջարեղեն | 0,01—0,1 | 0,02—0,2, Արյուն, փայծաղ, ոսկրեր, ձվարաններ, հիպոֆիզ, լյարդ | Խթանում է արյունաստեղծումը, մասնակցում սպիտակուցների սինթեզմանը, ածխաջրային փոխանակության կարգավորմանը |
| Mn | 0—0,5 | Հացամթերքներ | 4—36 | 2—10, Ոսկրեր, լյարդ, հիպոֆիզ | Ազդում է կմախքի զարգացման վրա, մասնակցում իմունիտետի ռեակցիաներին, արյունաստեղծմանը և հյուսվածքների շնչառությանը: Անբավարարության դեպքում կենդանիների մոտ՝ հյուծվածություն, կմախքի աճի և զարգացման դանդաղում |
| Cu | 0—0,1 | Հացամթերքներ, կարտոֆիլ, մրգեր | 1—10 | 1—4, Լյարդ, ոսկրեր | Նպաստում է աճին և զարգացմանը, մասնակցում արյունաստեղծմանը, իմունային ռեակցիաներին, հյուսվածքային շնչառությանը |
| Mo | 0—0,1 | Հացամթերքներ | 0,1—0,6 | 0,1—0,5, Լյարդ, երիկամներ, պիգմենտային թաղանթ, աչքեր | Մտնում է ֆերմենտների կազմի մեջ, արագացնում թռչունների և կենդանիների աճը, ավելցուկն առաջացնում է տավարի մոլիբդենոզ |
| F | 0—2,0 | Ջուր, բանջարեղեն, կաթ | 0,4—1,8 | 2—3, Ոսկրեր, ատամներ | Բարձրացնում է ատամների դիմացկունությունը ոսկրափուտի նկատմամբ, խթանում արյունաստեղծումը և իմունիտետը, մասնակցում կմախքի զարգացմանը, ավելցուկն առաջացնում է ֆլյուորոզ |
| Zn | 0—0,1 | Հացամթերքներ, միս, բանջարեղեն | 6—30 | 5—20, Լյարդ, շագանակագեղձ, ցանցաթաղանթ | Մասնակցում է արյունաստեղծման պրոցեսներին, ներզատիչ գեղձերի գործունեությանը, անբավարարության դեպքում՝ կենդանիների մոտ՝ աճի դանդաղում, պտղաբերության նվազում |

էներգիայի աճը ամեն մի պտույտի դեպքում պետք է լինի այնպիսին, որ հաստատուն մագնիսական դաշտում էլեկտրոնի պտտման պարբերության փոփոխությունը, կապված զանգվածի ռելյատիվիստական աճի հետ, հավասար լինի ամբողջ թիվ անգամ արագացնող էլեկտրական դաշտի պարբերություն: Այդ պայմանը բավարարելու համար հարկավոր է էլեկտրոններին հաղորդել էներգիայի մեծ աճ կամ կիրառել փոքր պարբերություն ունեցող արագացնող էլեկտրական դաշտ (այսինքն՝ օգտագործել էլեկտրամագնիսական դաշտի գերկարճալիքային տիրույթը), կամ էլ էլեկտրոնների պտտման պարբերությունը մեծ վերցնել, այսինքն՝ արագացնել թույլ մագնիսական դաշտում: Գործնականում կարիք է լինում այս երեք հնարավորություններն էլ օգտագործել միաժամանակ: Լայն տարածում են գտել այն Մ-ները, որոնք էլեկտրոններին հաղորդում են 4—5 *Մէվ* էներգիա (ստացված ամենամեծ էներգիան 30 *Մէվ*-ի կարգի է): Մ. կիրառվում է ոչ միայն միջուկային ֆիզիկայում, այլև բժշկության մեջ, կիսահաղորդչային ֆիզիկայում:

*Մ. Պետրոսյան*

**ՄԻԿՐՈՔԻՄԻԱԿԱՆ ԱՆԱԼԻԶ**, միկրովերլուծություն, փոքր քանակներով (0,01—0,001 *գ*) անօրգանական և օրգանական նյութերի բաղադրության լրիվ կամ մասնակի որոշման *վերլուծական քիմիայի* եղանակների համալիր: Մ. ա-ի հիմքում ընկած են ամենազգայուն և ընտրողական քիմ. ռեակցիաները: Մ. ա-ին հատուկ են նյութերի փոքր ծախսը, կատարման կարճատևությունը և ինքնատիպությունը: Պահանջում է ոչ բարդ, բայց հատուկ սարքավորումների ու գործիքների կիրառում: Ապահովվում է որոշման բավարար ճշտություն: Կիրառվում է կիսահաղորդիչների արդյունաբերությունում, մետալուրգիայում, ռադիոքիմիայում, կենսաքիմիայում, տիեզերաքիմիայում, կլինիկական, դատաքննչական, միներալոգիական հետազոտություններում, ինչպես նաև բնական ու սինթետիկ նյութերի բաղադրությունը ՝ որոշելու համար: Օրգ. նյութերում որոշում են տարրերի ու ֆունկցիոնալ խմբերի պարունակությունը և միացության մոլեկուլային զանգվածը: Որակական Մ. ա-ի ամենատարածված գործադրաձևերն են՝ կաթիլային վերլուծությունը, նրբաշերտ և բաժանող քրոմատոգրաֆիան, միկրոսպեկտրոսկոպիան ևն: Քիմ. ռեակցիան իրականացնում են ֆիլտրի կամ քրոմատոգրաֆիական թղթի, սորբենտային նրբաշերտի, ճենապակե թիթեղի, առարկայական ապակու վրա կամ մազական փորձանոթում (տես նաև *Որակական անալիզ*): Քանակական Մ. ա-ի եղանակներն են՝ տիտրաչափությունը, զանգվածաչափությունը և լուսաչափությունը: Ավելի հաճախ կիրառվում է դրանցից առաջինը, հատկապես տիտրման ավարտի որոշման էլեկտրաքիմիա-

կան եղանակների կիրառումով (կուլոնաչափություն ևն), իսկ օրգ. Մ. ա-ում՝ զանգվածաչափությունը և գազային քրոմատոգրաֆիան: Օգտագործում են $10^{-6}$ *գ* զգայնության միկրոկշեռքներ և $10^{-3}$ *մլ* զգայնության միկրոբյուրետներ: Բարդ նմուշների դեպքում Մ. ա. համատեղում են միկրովերլուծության ֆիզիկական եղանակների հետ (տես նաև *Քանակական անալիզ*): Մ. ա-ի ժամանակակից զարգացումն ընթանում է ֆիզիկաքիմիական եղանակների առավել օգտագործման ճանապարհով:

**ՄԻԿՐՈՕՐԳԱՆԻԶՄՆԵՐ**, մանրէներ, գլխավորապես միաբջիջ, միայն մանրադիտակով տեսանելի օրգանիզմներ: Մ. են համարվում *բակտերիաները*, *ճառագայթասնկերը*, խմորասնկերը, բորբոսասնկերը, միկոպլազմաները, մանրադիտակային ջրիմուռները, երբեմն նաև *նախակենդանիները* և *վիրուսները*: Մ-ին բաժանում են պրոկարիոտների (կորիզը թաղանթ չունի, պարունակում է մեկ քրոմոսոմ, չկան միտոքոնդրիաներ և քրոմատոֆորներ) և էուկարիոտների (կորիզը թաղանթապատ է, պարունակում է քրոմոսոմների հավաք, մեծ մասն ունի էնդոպլազմային ցանց, միտոքոնդրիաներ ևն): Պրոկարիոտներ են բակտերիաները, միկոպլազմաները, ճառագայթասնկերը, կապտականաչ ջրիմուռները. էուկարիոտներ՝ խմորասնկերը, բորբոսասնկերը, մնացած ջրիմուռները: Մ-ի մեծամասնությունը միաբջիջ է, սակայն բազմաթիվ բորբոսասնկեր ունեն բազմաբջիջ սնկամարմին: Մ. տարածված են ամենուրեք. 1 *գ* հողում կարող են լինել մինչև 2—3 մլրդ Մ.: Պարզված է, որ էներգետիկ փոխանակության և կենսասինթեզի շատ պրոցեսներ Մ-ում ընթանում են ճիշտ այնպես, ինչպես բարձրակարգ բույսերի ու կենդանիների բջիջներում, սակայն Մ-ում առկա են առանձնահատուկ ֆերմենտային համակարգեր և կենսաքիմիական ռեակցիաներ, որոնցով օժտված չեն մյուս էակները: Մ. մարդու, կենդանիների և բույսերի բազմաթիվ վարակիչ հիվանդությունների հարուցիչներ են, հսկայական դեր են կատարում նյութերի շրջապտույտում: Մ-ի կենսագործունեության վրա է հիմնված գինու, գարեջրի, թթու կաթնամթերքների արտադրությունը: Տես նաև *Մանրէաբանություն*:

**ՄԻԿՐՈՕՐԳԱՆԻԶՄՆԵՐԻ ԼԻԶԻՍ**, միկրոօրգանիզմների բջիջների քայքայումը (լուծումը) տարբեր գործոնների՝ բակտերիալիզինի, բակտերիաֆագերի և անտիբիոտիկների ազդեցությամբ: Կարող է տեղի ունենալ ավտոլիզի հետևանքով, որի ժամանակ սննդամիջավայրից առանձնացված և 35—40°C-ում պահվող միկրոօրգանիզմների բջիջները քայքայվում են սեփական պրոտեոլիտիկ ևն ֆերմենտների միջոցով: Մ. լ. կարելի է առաջացնել միկրոօրգանիզմների կուլտուրայի վրա հատուկ ֆերմենտներ կամ մարդկանց ու կենդանիների արյան մեջ պարունակվող հակամարմիններ ավելացնելով, որոնք քայքայում են բջջի պատը, ազդում սպիտակուցի վրա: Մ. լ-ի ձևերից է ֆագոլիզիսը, երբ միկրոօրգանիզմների բջիջները վարակում են տվյալ տեսակին բնորոշ վիրուսներով՝ ֆագերով, որոնց բազմացումն ու հասունացումը բջջի ներսում ավարտվում է Մ. լ-ով: Ֆագերով առաջացող Մ. լ. մեծ վնաս է հասցնում մանրէաբանական և սննդի արդյունաբերությանը: Մ. լ. են առաջացնում նաև որոշ մակերևութային ակտիվ նյութեր, մասնավորապես օճառները:

**ՄԻԿՐՈՖԱԳԵՐ** (*միկրո...* և հուն. φάγος— խժռող), ողնաշարավոր կենդանիների և մարդու արյան սպիտակ գնդիկների՝ *լեյկոցիտների* ձևերից մեկը: Հիդրոլիտիկ ֆերմենտներ արտադրելով՝ Մ. կարող են քայքայել մեռած հյուսվածքները: «Մ.» և *մակրոֆագեր* տերմիններն առաջարկել է Ի. *Մեչնիկովը*: Տես նաև *Նեյտրոֆիլներ*:

**ՄԻԿՐՈՖԱՈՒՆԱ** (*միկրո...* և *ֆաունա*), երկրաբանության մեջ կենդանական աշխարհի մանրադիտակային և մանր օրգանիզմների մնացորդների ամբողջությունը, որոնց համակարգային պատկանելությունը որոշելու համար պահանջվում է օգտագործել օպտիկական միջոցներ (մանրադիտակ, բինոկուլյար ևն): Մ. են, օրինակ, ֆորամինիֆերները, օստրակոդները ևն: Տերմինը չի համապատասխանում օրգանիզմների որևէ բնական խմբի, չունի համակարգային նշանակություն: Նրա ծավալն անորոշ է և փոխվում է *հնէաբանության* մեջ կիրառվող մեթոդների զարգացման հետ: Տերմինի օգտագործումը ենթադրում է երկու ֆաունայի՝ միկրո- և մակրոֆաունայի գոյությունը, որը ճիշտ չէ, քանի որ ֆաունան միասնական է:

**ՄԻԿՐՈՖԼՈՐԱ** (*միկրո...* և *ֆլորա*), բնական միջավայրերում՝ հողում, օդում, ջրում, սննդանյութերում, մարդու և կենդանիների, բույսերի օրգանիզմում գտնվող միկրոօրգանիզմների ամբողջություն: Մ-ի որակական և քանակական կազմը կախված է էկոլոգիական, կլիմայական, աշխարհագրական և այլ գործոններից և բնորոշում է տվյալ միջավայրի կենսբ. պրոցեսների ընթացքն ու ակտիվությունը: Բնական սուբստրատներում ապրում են տարբեր միկրոօրգանիզմներ՝ բակտերիաներ, ճառագայթասնկեր, խմորասնկեր, ջրիմուռներ ևն: Հողի Մ. (1 *գ*-ում 2—3 մլրդ միկրոօրգանիզմ) պայմանավորում է հողի բերրիությունը, բույսերի բերքատվությունը, հողառաջացման պրոցեսների ընթացքը ևն: Կախված կեղտոտության աստիճանից, ջրի 1 *մլ*-ում պարունակվում է 5—100 հզ. բջիջ և դրանով է բնորոշվում ջրավազանների կենսբ. արդյունավետությունը, ախտազերծումը վնասակար միկրոօրգանիզմներից: Բույսերի Մ. կարևոր է գինու, գարեջրի ևն արտադրության համար (խմորման պրոցեսներում): Տես նաև *Աղիքային ֆլորա*:

**ՄԻԿՐՈՖՈՆ** (*միկրո...* և հուն. φωνή — հնչյուն), ձայնային տատանումները էլեկտրականի փոխակերպող էլեկտրաձայնային սարք: Կիրառվում է հեռագրության, ռադիոհաղորդումների, հեռուստատեսության մեջ, ձայնի ուժեղացման և ձայնագրման համակարգերում: Ըստ գործողության սկզբունքի լինում են ածխային, էլեկտրադինամիկական (լինում են կոճային և ժապավենային տիպերի), կոնդենսատորային, էլեկտրետային, պիեզոէլեկտրական և էլեկտրամագնիսական, ըստ գործողության ուղղվածության՝ չուղղորդված, միակողմանի և երկկողմանի ուղղորդված: Ստերեոֆոնային ռադիոհաղորդումներում և ձայնագրման մեջ կիրառում են երկու միատեսակ միաուղղորդված Մ-ների (հաճախ կոնդենսատորային կամ էլեկտրադինամիկական) համակարգ: Երկու Մ. կից տեղավորվում են մեկ պատյանում իրար տակ այնպես, որ առավելագույն զգայնության ուղղությունները իրար հետ կազմեն 90° անկյուն (ստերեոֆոնային Մ.): Աղյուսակում բերված են Մ-ի հիմնական պարամետրերի միջինացված արժեքները (փակագծերում նշված են որակի դասերը. Բդ-բարձր, 1դ-առաջին, 2դ-երկրորդ, 3դ-երրորդ):

**ՄԻԿՈՒԼԻ** Կարլ, Կարոլ [1821, Չեռնովիցի —1897, Լվով (այլ տվյալներով՝ 1819—1896)], լեհական կոմպոզիտոր, դաշնակահար, մանկավարժ: Սերում է XIX դ. սկզբին Մոլդավիայից Բուկովինա գաղթած հայ ազնվական Մ. տոհմից: 1844—47-ին Փարիզում աշակերտել է Ֆ. Շոպենին: 1848—58-ին համերգներով հանդես է եկել Եվրոպայում և Ռուսաստանում: 1858-ից եղել է Գալիցիայի երաժշտական ընկերության նախագահ, Լվովի կոնսերվատորիայի դիրեկտոր և պրոֆեսոր: 1887-ին հիմնադրել է սեփական երաժշտական դպրոց, որ ղեկավարել է մինչև կյանքի վերջը: Մ. իր ստեղծագործության ոճով հարում է վաղ ռոմանտիկներին: Գրել է բազմաթիվ դաշնամուրային երկեր (մազուրկաներ, վալսեր, պոլոնեզներ ևն), սերենադ դաշնամուրի և կլառնետի, սկեր-

| Միկրոֆոնի տեսակը | Պարամետրերը | | |
|---|---|---|---|
| | վերարտադրվող հաճախականության դիապազոնը, *հց* | հաճախականության բնութագրի անհամաչափությունը, *դբ* | առանցքային հաճախականությունը 1000 *հց* հաճախականության դեպքում, *մվ.մ²/ն* |
| Ածխային | 300—3400 (3դ) | 20 | 1000 |
| Էլեկտրադինամիկական | 100—10000 (1դ) | 12 | 0,5 |
| (կոճային տիպի) | 30—15000 (Բդ) | | 1,0 |
| Էլեկտրադինամիկական | 50—10000 (1դ) | 10 | 1 |
| (ժապավենային տիպի) | 70—15000 (Բդ) | | 1,5 |
| Կոնդենսատորային | 30—15000 (Բդ) | 5 | 5 |
| Պիեզոէլեկտրական | 100—5000 (2դ) | 15 | 50 |
| Էլեկտրամագնիսական | 300—5000 | 20 | 5 |

ջինո 3 ջութակի համար: «Armenien» ստեղծագործության մեջ կոմպոզիտորը օգտագործել է Լվովի հայերի երգերի մեղեդիներ: Հավաքել և մշակել է լեհ., ռում., գուցուլական, մոլդավական ժող. երգեր: Մ. եղել է Շոպենի ամբողջական երկերի լավագույն հրատարակության (1879) խմբագիրը: Դրանում մեծ արժեք է ներկայացնում Մ-ի աշակերտական օրինակի վրա իր իսկ՝ Շոպենի կողմից գրված տարբերակների մեջբերումը: Թաղված է Լվովի հայկ. եկեղեցում:

*Գրկ.* Апоян Ш. А., Фортепианная музыка Советской Армении, Е., 1968, с. 10—12.

*Ց. Բրուտյան*

**ՄԻԿՈՒԼԻՆ** Ալեքսանդր Ալեքսանդրովիչ (ծն. 1895), ավիացիոն շարժիչների բնագավառի սովետական կոնստրուկտոր: ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս (1943), ինժեներատեխնիկական ծառայության գեներալ-մայոր (1943), սոցիալիստական աշխատանքի հերոս (1940): ՍՄԿԿ անդամ 1954-ից: 1929-ին մշակել է ԱՄ-34 շարժիչի



Ա. Ա. Միկուլին

նախագիծը: Շարժիչը տեղակայվել է ԱՆՏ-25 ինքնաթիռներում, որոնցով 1937-ին Վ. Պ. Չկալովը և Մ. Մ. Գրոմովը Հյուսիսային բևեռով երկարատև անվայրէջք թռիչք կատարեցին դեպի ԱՄՆ: 1939-ին, Մ-ի ղեկավարությամբ ստեղծված ԱՄ-35Ա շարժիչը տեղակայվել է ՄԻԳ կործանիչներում: Հայրենական մեծ պատերազմի (1941—45) տարիներին Մ. ղեկավարել է ԱՄ-38 և ԱՄ-38Ֆ հզոր շարժիչների ստեղծման աշխատանքները: 1943-ից ավիացիոն շարժիչների գլխավոր կոնստրուկտոր: Մշակել է հայրենական առաջին տուրբակոմպրեսորը և փոխիխական քայլի պտուտակը: Ետպատերազմյան տարիներին Մ-ի գլխավորությամբ ստեղծվել են մի շարք տուրբառեակտիվ շարժիչներ: ՍՍՀՄ պետ. մրցանակներ (1941, 1942, 1943, 1946): Պարգևատրվել է Լենինի 3 շքանշանով:

**ՄԻՀՐ**, հայկական հեթանոսական տոմարի ամիսների 8-րդ օրվա անունը: Կապվում է *Միհր* աստծու անվան հետ:

**ՄԻՀՐ**, Միթրաս, կենսատու լույսի, մաքրության, բարության, ճշմարտության, ավելի ուշ՝ Արեգակի աստվածը հին արիական ժողովուրդների կրոններում: Դեռևս մ. թ. ա. II հազարամյակի կեսին Մ-ի պաշտամունքը տարածված է եղել Միտաննի պետությունում, այնուհետև՝ հնագույն Հնդկաստանում, ապա՝ Աքեմենյան աշխարհակալությունում: Մինչև մ. թ. ա. V դ. Մ-ի անունը չի հանդիպում հին պարսկ. գրավոր աղբյուրներում: Ըստ առասպելի, Մ. ծնվել է ժայռից (զրադաշտական կրոնը նրան համարում է Արամազդի կամ Որմզդի որդի) և դաստիարակվել հովիվների մոտ: Գործել է սխրանքներ (կռվել չար ոգիների դեմ, սանձել և զոհաբերել Արամազդի նախաստեղծ Ոսկե ցլին, որի սրբազան արյունով բեղմնավորված հողում աճել են բոլոր օգտակար բույսերը ևն): Ի վերջո համբարձվել է երկինք և այնտեղից վեց հազար աչքերով ու նույնքան ականջներով դիտել ու լսել երկրային բարի արարածներին, հովանավորել նրանց: Հետագայում Մ. համարվել է ազատարար մարտիկ կամ փրկիչ (մեսիա), որը երկրորդ գալստյամբ աշխարհին ազատելու էր չար ոգիներից ու մահից, ստեղծելով երկրային երանելի թագավորություն: Հրով մաքրագործված ու նորոգված աշխարհում Մ-ի ահեղ դատաստանին են արժանանալու բոլոր ննջեցյալները, արդարները հարություն են առնելու, մեղավորները՝ պատժվելու: Մ-ի համընդհանուր պաշտամունքի հիման վրա մ. թ. ա. IV—II դդ. ձևավորվել է հատուկ կրոն՝ *միհրականությունը*: II դ. Հռոմի կայսրերը (հատկապես Ավրելիանոսն ու Դիոկղետիանոսը) հովանավորել են Մ-ի պաշտամունքը, կրել նրա որոշ տիտղոսները («մշտնջենավոր», «ամենահաղթ»): Հռոմ. կայսրության մեջ Մ-ի ծննդյան տոնը նշվել է դեկտ. 25-ին՝ ձմեռային արևադարձի օրը (IV դ. փոխվեց Քրիստոսի ծննդյան տոնի): Մ-ի պաշտամունքը Հռոմում կրել է *միստերիաների* բնույթ և կատարվել է այրային տաճարներում (միթրեաներում): Մ-ի միստերիաներին մասնակցել են միայն նվիրյալ այրերը, որոնք պիտի անցնեին զանազան փորձություններով ու միստերիաներին նվիրվելու 7 աստիճանով (ըստ մոլորակների թվի):

Հայաստանում Մ-ի պաշտամունքը տարածված է եղել անհիշելի ժամանակներից: Ստրաբոնը վկայում է, որ Աքեմենյանների տիրակալության ժամանակ Հայաստանի սատրապը Մ-ի ամենամյա տոնին նվիրաբերել է 20 հզ. մտրուկ ձի: Մ-ի տոնը հայոց մեջ նշվել է Արեգ ամսին (համընկնում է իրանական Միհր կամ Միթրա ամսին): Հայոց 7-րդ ամիսը՝ մարտը, Մ-ի անունով կոչվել է Մեհեկան կամ Մեհեկին, իսկ յուրաքանչյուր ամսվա 8-րդ օրը՝ Միհր: Հայաստանում Մ-ի գլխավոր տաճարատեղին գտնըվել է Բարձր Հայք նահանգի Դերջան գավառի Բագառիճ (Բագառինջ) ավանում, որը 301-ից փոխվեց եկեղեցու: Իրանում, Հայաստանում, Վիրքում, Աղվանքում, փոքրասիական շատ երկրներում Մ-ի անունով կերտվել են անձնանուններ (Միհրան, Միհր-Ներսեհ, Միհր-Արտաշես, Միհրան-Շապուհ, Միհրդատ, Միթրադատես, Մհեր, Մեհրուժան ևն): Մ-ի անունով են կոչվել «Սասնա ծռեր» դյուցազնավեպի գլխավոր հերոսներից երկուսը՝ Մեծ կամ Առյուծաձև Մհերը (զրադաշտական կրոնում առյուծը դիտվել է հզորության և սրբազան կրակի խորհրդանիշ) և Փոքր Մհերը, որոնց սխրագործություններում առկա են Մ-ին վերագրվող որոշ գծեր: Օրինակ, Փոքր Մհերը ներկայացվում է որպես աշխարհի փրկիչ, որը դուրս է գալու Վանա Ագռավու քար (կրակապաշտության մեջ ագռավը համարվել է կրակը պաշտպանող սրբազան թռչուն) կոչվող ժայռից, ազատելու է չարության ոգիների ձեռքում տառապող մարդկությանը և հիմնելու երանավետ թագավորություն: Վանի դիցանվեր քարայրերից մեկը հայտնի է «*Մհերի դուռ*» անունով (Իրանում ևս Մ-ին նվիրված զոհարանները կոչվել են «Դար-ի Միհր»—«Միհրի դուռ»), որտեղ ըստ ժողովրդի հավատքի, պահվում էր «անշեջ ճրագը»:

Մ-ի պաշտամունքն աստիճանաբար անհետացել է IV դարից, երբ քրիստոնեությունը հաղթանակել և ճանաչվել է պաշտոնական կրոն: Վերջինս ներառել է միհրականության մի շարք գծեր (Քրիստոսի ծննդյան, համբարձման, հաղորդության ևն):

Հնագույն քանդակներում Մ. հաճախ պատկերվել է առույգ պատանու տեսքով, փռուգիական կամ հայկ. խույրով, տապալված ցլին քարայրում զոհաբերելիս:

*Գրկ.* Ալիշան Ղ., Հին հավատք կամ հեթանոսական կրոնք հայոց, Վնտ., 1895: Սարգիսյան Բ., Ագաթանգեղոս և յուր բազմադարյան գաղտնիքն, Վնտ., 1890, էջ 137—139: Ավդալբեգյան Թ., Միհրը հայոց մեջ, Հայագիտական հետազոտություններ, Ե., 1969: Թոփճյան Բ., Միհրականություն, Բեյրութ, 1969: Ревилль Ж., Религия в Риме при Северах, М., 1898, с. 92—110; Дрезден М., Мифология древнего Ирана, в кн.: Мифология древнего мира, пер с англ., М., 1977, с. 350-351; Widengren G., Die Religionen Irans, Stuttgart, 1965.

*Մ. Կատվալյան*

**ՄԻՀՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, միթրայականություն, *Միհր* աստծու պաշտամունքի հետևանքով ձևավորված կրոնական վարդապետություն: Տարածված է եղել Հնդկաստանում, Իրանում, Հայաստանում, Վիրքում, Աղվանքում, Փոքր Ասիայի երկրներում, իսկ մ. թ. ա. IV—II դդ.՝ հելլենիստական երկրներում ու Հունաստանում, I—III դդ.՝ Հռոմեական կայսրությունում: IV դ., մի շարք երկրներում քրիստոնեությունը պետ. կրոն հռչակվելուց հետո, Մ. աստիճանաբար դադարել է գոյություն ունենալուց: Իրանում վերացվել է արաբ. նվաճումների (VII դ.) և այնտեղ մահմեդականության տարածման հետևանքով:

**ՄԻՀՐԱՆՅԱՆՆԵՐ**, իշխանական տոհմ Մեծ Հայքի Արցախ և Ուտիք նահանգներում՝ VI դ. վերջին —IX դ. սկզբին: Հիմնադրել է պարսիկ Սասանյաններից սերած Միհրանը, որը փախչելով պարսից արքա Խոսրով Բ Փարվեզի վրեժխնդրությունից, ըստ Մովսես Կաղանկատվացու, իրր 30 հզ. ընտանիքով հաստատվել է Ուտիք նահանգի Գարդման գավառում: Միհրանը և նրա ժառանգները դավով ու խորամանկությամբ կոտորել են հայ *Առանշահիկներին*, աստիճանաբար գերիշխանության հասել Կուրի ու Արաքսի միջև ընկած տարածքում՝ իրենց վերապահելով *Աղվանքի* «առաջին իշխանի» տիտղոսը: Երկու-երեք սերունդ հետո Մ. ընդունել են քրիստոնեություն, հետզհետե խնամիական կապեր հաստատել տեղի հայ իշխանական տների հետ և հայացել: Մ-ի նստավայրը եղել է Պարտավը: Մ. կրել են «Գարդմանից տեր և Աղվանից իշխան» տիտղոսը, որը փոխանցվել է հիմնականում ժառանգաբար: Կրել են թագ, ունեցել դրոշակ և զի-

նանշան: Առաջին Մ-ի դիրքը Ուտիքում և Արցախում կայուն չի եղել, բայց արդեն VII դ., հեռատես և շրջահայաց քաղաքականությամբ կարողացել են պահպանել երկրի ինքնուրույնությունը՝ խազարների կրկնվող արշավանքների, բյուզանդա-պարսկական, ապա բյուզանդա-արաբական հակամարտությունների հետևանքով Անդրկովկասում ստեղծված բարդ իրավիճակում: Մ-ից առավել նշանավոր են Միհրը, Քաջ Վարդանը, *Ջիվանշիրը* (642—83), Վարազ-Տրդատ Ա (683—99, 705—09): Ջիվանշիրի օրոք Մ. հասել են իրենց քաղ. և տնտ. հզորության գագաթնակետին: Մ-ի իշխանությունը տարածվել է Աղվանքի նախկին մարզպանության ողջ տարածքի վրա, բարեկամական հարաբերություններ են հաստատվել Բյուզանդիայի, խազարների և Արաբական խալիֆայության հետ: Ջիվանշիրից հետո սկսում է Մ-ի հզորության անկումը: Վերջին Մ. ամբողջովին ենթակա էին մերթ Արաբական խալիֆայությանը, մերթ Բյուզանդական կայսրությանը: Մ-ի տոհմի վերջին ներկայացուցիչ Վարազ-Տրդատ Գ, որդու՝ Ստեփանոսի հետ սպանվել է 821-ին: Վարազ-Տրդատ Գ-ի դստերը՝ Սպրամին, մայրը փախցրել է Խաչեն և ամուսնացրել Առանշահիկ Սահլ Սմբատյանի որդու՝ Ատրներսեհի հետ: Այնուհետև Մ. վերացել են քաղ. ասպարեզից, իրենց տեղը զիջելով Աղվանքի նախկին տերերին՝ Առանշահիկներին:

*Գրկ.* Մ ո վ ս ե ս  Կ ա ղ ա ն կ ա տ վ ա ց ի, Պատմություն Աղվանից աշխարհի, Ե., 1969: Ո ւ լ ո ւ բ ա բ յ ա ն  Բ. Ա., Խաչենի իշխանությունը X—XVI դարերում, Ե., 1975: Ս վ ա զ յ ա ն  Հ., Աղվանքը և Միհրանյան տոհմը, «ԼՀԳ», 1980, № 9: *Հ. Սվազյան*

**ՄԻՀՐԴԱՏ**, Պարթև թագավորներ.

**Մ. I** Մ ե ծ (ծն. թ. անհտ.— մ. թ. ա. մոտ 136), թագավոր մ. թ. ա. մոտ 171—138/137-ին: Հաջորդել է եղբորը՝ Հրահատ I-ին: Մ. I Մագնեսիայի ճակատամարտից (մ. թ. ա. 190) հետո Պարսկական բարձրավանդակում առաջացած անկախ պետությունները ատիճանաբար միավորել է և ստեղծել հզոր պետություն: Իշխանության առաջին տարիներին արլ-ում նվաճել է Բակտրիայի տարածքի զգալի մասը, մ. թ. ա. 155-ին՝ Փոքր Մարաստանը, 141-ին՝ Սելևկիա քաղաքը, ապա՝ Բաբելոնը և իրեն հռչակել Բաբելոնի թագավոր: Մ. I իրեն կոչել է «մեծ արքա»: Դեպի Պարթևաստանի արլ. սահմանները շարժվող Միջին Ասիայի վաչկատուն ցեղերի առաջխաղացումը կասեցնելու նպատակով, Մ. I մ. թ. ա. 141-ին մեկնել է Վրկանաց աշխարհ, ուր մնացել է մինչև կյանքի վերջը:

**Մ. II** (ծն. թ. անհտ.—մ. թ. ա. մոտ 88/87), թագավոր մ. թ. ա. մոտ 123-ից: Արտավան II-ի որդին: Պարթևաստանի արմ. սահմանը հասցրել է մինչև Եփրատ գետը: Հարավային Միջագետքում իր գերիշխանությանն է ենթարկել Խառանի թագավորությունը: Հյուսիսային Աստրիքում ջախջախել է Սելևկյանների զորքը և գերի վերցրել Սելևկյան դինաստիայի ներկայացուցիչ Դեմետրիոս III-ին: Արլ-ում Մ. II կանգնեցրել է սակերի առաջխաղացումը: 115-ին գրավել է Մերվը, պետության հս-արլ. սահման դարձրել Ամուդարյա գետը: Ըստ Հուստինոսի, Մ. II պատերազմել է Հայոց թագավոր *Արտավազդ Ա*-ի դեմ և պատանդ վերցրել թագաժառանգ Տիգրանին (*Տիգրան Բ* Մ ե ծ): Հետագայում Մ. ազատել է Տիգրանին, օժանդակել նրա գահակալմանը, որպես փրկագին Տիգրանից ստացել «Յոթանասուն հովիտ» կոչված տարածքը, ամուսնացել Տիգրանի դստեր հետ: Մ. II պարթևական առաջին թագավորն էր, որը կրել է «արքայից արքա» տիտղոսը: Ստեղծել է կանոնավոր բանակ, որի հարվածային զլխավոր ուժը կազմում էր թեթևազեն (աղեղնավոր) և ծանրազեն (զրահապատ նիզակավոր) հեծելազորը: Մ. թ. ա. 91-ին Մ. II-ի դեմ ապստամբել է արմ. նահանգների կառավարիչ Գոդերձը (Գոտարզ), իրեն հռչակել պարթևաց արքա, միանձնյա կառավարել է Մ. II-ի մահից հետո:

*Ն. Արզումանյան*

**ՄԻՀՐԴԱՏ VI** Ե վ պ ա տ ո ր (մ. թ. ա. 132, Սինոպե — 63, Պանտիկապեոն), Պոնտոսի թագավոր մ. թ. ա. 111-ից: Հելլենիստական դարաշրջանի ռազմ. և քաղ. գործիչ: Մ. VI Պոնտոսը դարձրել է հզոր պետություն (տես *Պոնտոսի թագավորություն*), նվաճելով Փոքր Ասիայի մեծ մասը՝ Բութանիան, Կապադովկիան, Պափլագոնիան, Փոքր Հայքը, Կողքիսը, իր իշխանությունը տարածել Բոսպորի թագավորության (Ղրիմ) վրա, մ. թ. ա. 107-ին ճնշել *Սավմակի ապստամբությունը*: Պայքարել է հռոմ. պետության զավթողական քաղաքականության դեմ, վարել պատերազմներ (տես *Միհրդատյան պատերազմներ մ. թ. ա. 89—63*): Իր դեմ ուղղված որդու ապստամբության ժամանակ ինքնասպան է եղել:

Մ. VI սերտորեն դաշնակցել է Հայոց արքա *Տիգրան Բ* Մ ե ծ ի հետ (որին կնության էր տվել իր դուստր Կլեոպատրային), միասին նվաճել են Կապադովկիան: Մ. թ. ա. 69—66-ի հռոմա-հայկական պատերազմի ժամանակ Մ. VI (որն ապաստանել էր Հայաստանում) աջակցել է Տիգրան Բ-ին հռոմեացիների դեմ պայքարում:

*Գրկ.* Մ ա ն ա ն դ յ ա ն  Հ., Տիգրան Երկրորդը և Հռոմը, Ե., 1972: Հայ ժողովրդի պատմություն, հ. 1, Ե., 1971: *Գ. Սարգսյան*

**ՄԻՀՐԴԱՏ ԻԲԵՐԱՑԻ** (ծն. թ. անհտ.—51), Մեծ Հայքի դրածո թագավոր 35—37, 47—51-ին, Իբերիայի Փարսման թագավորի եղբայրը: Գահ է բարձրացել հռոմ. զորքերի օգնությամբ: Տակիտոս պատմիչը վկայում է, որ դաժան Մ. Ի., հայոց մեջ հենարան չգտնելով, ապավինել էր Գառնիում և այլ բերդերում տեղակայված հռոմ. զորքերի ուժին: Խեղդամահ է եղել իր եղբորորդու՝ գահատենչ Հռադամիզդի ձեռքով:

**ՄԻՀՐԴԱՏՅԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐ Մ. Թ. Ա. 89—63**, մղվել են Հռոմի և Պոնտոսի թագավորության միջև: Հռոմը ձգտել է նոր տարածքներ գրավել Փոքր Ասիայում, իսկ Պոնտոսը՝ խոչընդոտել դրան, իր ազդեցությունը պահպանելու համար: Մ. պ. են անվանվել Պոնտոսի թագավոր *Միհրդատ VI* Եվպատորի անունով: Ա ռ ա ջ ի ն  պ ա տ ե ր ա զ մ ը (մ. թ. ա. 89—84) սկսել է Միհրդատ VI, նվաճել է Հունաստանը և Սև ծովի առափնյա տարածքները, սակայն հռոմ. զորքերը Սուլլայի զլխավորությամբ կարողացել են կասեցնել նրա առաջընթացը, և 84-ին կնքվել է Դարդանոսի բանավոր հաշտությունը: Ե ր կ ր ո ր դ  պ ա տ ե ր ա զ մ ը (մ. թ. ա. 83—81) նշանակալի չի եղել: Ե ր ր ո ր դ  պ ա տ ե ր ա զ մ ը (մ. թ. ա. 74—63) դարձյալ սկսել է Միհրդատ VI, սակայն հռոմ. զորքերը, զորավար *Լուկուլլոսի* գլխավորությամբ, դուրս են մղել Միհրդատ VI-ին իր սեփական երկրից, որից հետո նա անցել է Հայաստան և ապաստանել իր դաշնակից և փեսա *Տիգրան Բ* Մ ե ծ ի մոտ: Մ. թ. ա. 69-ին Լուկուլլոսը ներխուժել է Հայաստան (որը չէր մասնակցում Մ. պ-ին): Մ. պ. վերածվել են հռոմա-հայկական պատերազմի: Միհրդատին, որը հայկ. ուժերի օգնությամբ փորձել էր վերանվաճել իր երկիրը, վերջին հարվածը հասցրեց Լուկուլլոսին փոխարինած *Պոմպեոսը*: Միհրդատ VI փախավ Բոսպորի թագավորություն: Պոնտոսը սկսեցին կառավարել Հռոմի դրածոները: Մ. պ-ի հետևանքով Հռոմը տիրեց գրեթե ամբողջ Փոքր Ասիային:

*Գրկ.* Մ ա ն ա ն դ յ ա ն  Հ., Տիգրան Երկրորդը և Հռոմը, Ե., 1972: Հայ ժողովրդի պատմություն, հ. 1, Ե., 1971: *Գ. Սարգսյան*

**ՄԻՄԱՆՍԱ** (սանսկրիտ. mimansa — հետազոտում, ներթափանցում, բանավեճ), հին հնդկական 6 ուղղափառ փիլիսոփայական ուսմունքներից հինգերորդը, որն զբաղվում էր *վեդաների* մեկնությամբ: Ձևավորումը (ոչ շուտ II դ. մ. թ. ա.— ոչ ուշ II—III դդ. մ. թ.) կապվում է Ջայմինիին վերագրվող «միմանսա-սուտրա»-ի հետ: Գործնականորեն Մ. կոչված էր կարգավորել վեդայական բարդ ծիսակարգը: Ընդունում էր վեդաների հեղինակությունը, սակայն պաշտպանում աշխարհի նյութականության դրույթը: *Նյայայի* իմացաբանությանը տալով յուրահատուկ ինդուկտիվ-հիպոթետիկ ուղղվածություն՝ Մ. աստվածներին համարում է լեզվական վերացարկումներ: Իրական են ոչ թե աստվածները, այլ նրանց անունները, որ իմաստավորվում են ծիսական արարողությամբ: Մ. հետազոտել է նաև իմացության տեսության, լեզվի և մտածողության, բառի և նշանակության փոխհարաբերության հարցեր: Հետագայում (VII—VIII դդ.) ձուլվել է *վեդանտայի* հետ:

**ՄԻՄԱՍ**, *Սատուռնի* մոլորակի արբանյակը: Հայտնաբերել է Վ. *Հերշելը* 1789-ին: Միջին հեռավորությունը Սատուռնի կենտրոնից 186 հզ. *կմ* է, տրամագիծը՝ 500 *կմ*, պտտման պարբերությունը՝ 22 *ժ* 37 *ր*: Երկրից երևում է 12,1 *աստղային մեծության*:

**ՄԻՄԵՍԻՍ** (< հուն. μίμησις) գ ե ղ ա գ ի տ ո ւ թ յ ա ն  մ ե ջ, ուսմունք, որը գեղարվեստական ստեղծագործությունը և մարդկային իմացությունը համարում է իրականության նմանեցում և վերարտադրում: Մ-ի գաղափարը առաջ են քաշել պյութագորասականները՝ երաժշտական ներդաշնակությունը համարելով «երկնակամարների ներդաշնակության» արտացոլում: Ըստ Մ-ի մատերիալիստական ուսմունքի հիմնադիր Դեմոկրիտի, արհեստի և արվեստի զանազան տեսակներ մար-

դիկ սովորել են՝ ընդօրինակելով կենդանիներին:

Մ-ին իդեալիստական մեկնաբանություն է տվել Պլատոնը: Ի տարբերություն մարդկային արվեստի, որը նմանակում է անցողիկ և նյութական աշխարհը, Պլատոնը իսկական արվեստի նպատակ է ճանաչել գաղափարների բացարձակ գեղեցկության նմանակումը: Արիստոտելը զարգացրել է Մ-ի մատերիալիստական ուսմունքը, ըստ որի արվեստը իրականության, հատկապես մարդկային գործողությունների, վերարտադրությունն է: Նրա կարծիքով նմանողության ունակությունը հատուկ է մարդուն ի ծնե: Մ-ի տեսությանը հետևել են Լուկրեցիոսը, Պլուտարքոսը, Պլոտինը, Թովմա Աքվինացին, Լ. Ալբերտին, Լեոնարդո դա Վինչին ևն: Մ-ի գաղափարը մեծ տեղ է գրավում կլասիցիզմի գեղագիտության մեջ: Մ. ունեցել է իր հակառակորդները ի դեմս Պատրիցիի, Ի. Կանտի, Գ. Հեգելի, Ֆ. Շելինգի ևն:

Հայ գեղագիտության մեջ Մ-ի գաղափարն արտահայտել են Դավիթ Քերականը, Անանուն Մեկնիչը, Մովսես Խորենացին, Եզնիկ Կողբացին, *Դավիթ Անհաղթը*, Ստեփանոս Սյունեցին և ուրիշները: Մ-ի ամբողջական ուսմունք է մշակել *Հովհաննես Սարկավագ Իմաստասերը*, ըստ որի, բնությունը արվեստի միակ հիմքն է և արվեստագետի ուսուցիչը, սակայն բնությանը պետք չէ կուրորեն ընդօրինակել, այլ ստեղծագործաբար վերարտադրել: Նրա հայացքներում միաձուլվում են անտիկ շրջանից սկիզբ առնող Մ-ի երկու ըմբռնում. բնության վերարտադրումը որպես գեղարվեստական ստեղծագործության ընթացքի անհրաժեշտ բաղադրամաս (Հերակլիտ, Սոկրատես, Արիստոտել) և վերարտադրումը որպես արվեստի հիմք և աղբյուր (Դեմոկրիտ, Լուկրեցիոս): Նոր ժամանակում Մ-ին անդրադարձել են Ստեփանոս Լեհացին, Խաչատուր Էրզրումցին և ուրիշներ:

*Գրկ.* Лосев А. Ф., История античной эстетики (ранняя классика), М., 1963; Նույնի, История античной эстетики. Софисты. Сократ. Платон, М., 1969; Лосев А. Ф., Шестаков В. П., История эстетических категорий, М., 1965; Апресян Г. З., Из истории армянской эстетической мысли, кн. 1, Е., 1973; Ауэрбах Э., Мимесис: Изображение действительности в западноевропейской литературе, пер. с нем., М., 1976; Очерк развития эстетической мысли в Армении, М., 1976. *Կ. Միրումյան*

**ՄԻՄԵՏԻԶՄ** (< հուն. μιμητής — նմանակող), մի տեսակի կենդանիների (իմիտատոր) նմանությունը թշնամիներից ինչ-որ ձևով պաշտպանված այլ տեսակի (մոդել) հետ: *Միմիկրիայի* մասնավոր դեպքն է: Մ. արդյունավետ է այն դեպքում, երբ նմանակողը բնակվում է նույն տեղանքում, ինչ որ մոդելը, և քանակապես զգալիորեն զիջում է նրան: Տարբերում են Մ-ի 2 ձև՝ Հ. Բեյթսի և Ֆ. Մյուլլերի: Գիշատիչներից պաշտպանված և չպաշտպանված կենդանիների նմանությունը կոչվում է բեյթսյան Մ.: Օրինակ՝ բազմաթիվ ճանճերի, թիթեռների նմանությունը մեղուներին, կրետներին, իշամեղուներին: Մյուլլերյան Մ-ի դեպքում գիշատիչներից պաշտպանված կենդանիների մի քանի տեսակներ արտաքինով նման են իրար և առաջացնում են այսպես կոչված միմիկրիայի «օղակ»: Գիշատիչները մեկ տեսակի նկատմամբ համապատասխան ռեֆլեքս մշակելուց հետո չեն վնասում նաև «օղակի» մյուս անդամներին:

**ՄԻՄԵՐԱ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Տրապիզոնի վիլայեթի Պլատանա գավառակում: 1914-ին ուներ 65 տուն հայ բնակիչ, որոնց նախորդները գաղթել էին Համշենից XVII դ. վերջին: Զբաղվում էին անասնապահությամբ, կաթնատնտեսությամբ և մեղվաբուծությամբ: Բնակիչների զգալի մասը հողազուրկ էր: Գյուղում կար եկեղեցի և ուսումնարան: Բնակիչները տեղահանվել և զոհվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: *Բ. Թոռլաքյան*

**ՄԻՄԻԿԱ** (< հուն. μιμικός — նմանվող), տես *Դիմախաղ*:

**ՄԻՄԻԿՐԻԱ** (անգլ. mimicry, < հուն. μιμικός — նմանվող), միմեզիա, կենդանիների պաշտպանական գունավորման և ձևի տեսակներից մեկը, որի դեպքում կենդանին նմանվում է շրջապատող միջավայրի առարկաներին, բույսերին, ինչպես նաև գիշատիչների կողմից ոչ ուտելի կամ դրանցից պաշտպանված կենդանիներին (*միմետիզմ*): Առաջացել է էվոլյուցիայի ընթացքում, *բնական ընտրությամբ*, որպես *գոյության պայքարի* միջոց: Շրջապատի առարկաներին նմանվելու օրինակներ. կոճղար-կաչաղակի, քարադրի և մի շարք այլ թռչունների ձվերը նման են հղկված գետաքարերի, երկայնաքիթ բզեզները և առագաստաթիթեռների թրթուրները թռչունի ծիրտ են հիշեցնում: Ավելի հաճախ կենդանիները նմանվում են բույսերի առանձին օրգանների: Օրինակ՝ ծովաձի և ծովասեղ ձկները հիշեցնում են այն ջրիմուռներին, որոնց մեջ թաքնվում են: Արևադարձային բազմաթիվ օձեր չեն տարբերվում լիաններից: Շատ թիթեռներ, ուղղաթևեր, ձկներ ունեն թարմ կամ չոր տերևների գույներ, ուրվագծեր և նույնիսկ ջղավորություն: Բազմաթիվ աղոթարարներ նմանվում են բույսերի ընձյուղների, իսկ մի քանիսը՝ ծաղիկների: Կենդանիների որոշ տեսակներ նման են կոտրված ճյուղերի, քարաքոսերի: Որոշ չոր տերևների նման թիթեռներ շրջանաձև շարժումներ են կատարում և հիշեցնում թափվող տերևներին: Տերևներին նմանվող շատ միջատներ ակտիվ են օրվա ամենաշոգ ժամին, երբ նրանց համար վտանգավոր թռչունները քիչ են թռչում և, հակառակը, անշարժ են առավոտյան և երեկոյան, երբ թռչուններն ավելի ակտիվ են: Միջատների մոտ լավ է արտահայտված իրենց գունավորմանը համապատասխան ֆոն ընտրելու բնազդը:

Բույսերի Մ. գլխավորապես ծառայում է օգտակար կենդանիներին գրավելու և վնասակարներին վանելու (վախեցնելու) համար: Հաճախ դա վերաբերում է առանձին օրգաններին և ոչ թե ամբողջ օրգանիզմին, ինչպես հատուկ է կենդանիներին: Այսպես, նեկտարազուրկ շատ ծաղիկներ նման են մեղրատուներին, գրավում են միջատներին և ապահովում փոշոտումը: Միջատակեր բույսերի որսացող օրգանները հաճախ հիշեցնում են այլ բույսերի վառ ծաղիկներին և դրանով հրապուրում միջատներին: Խոլորձի ծաղիկները նմանվում են որոշ տեսակի միջատների էգերին և գրավում են դրանց արուներին (հատկապես այն շրջանում, երբ էգերը դեռ քիչ են): Առանձին բույսեր իրենց փոշոտող միջատներին հրապուրող կամ խոտակեր կենդանիներին վանող հոտեր են արձակում:

Պատկերազարդումը տես 592—593-րդ էջերից հետո՝ ներդիրում:

**ՄԻՄՆԵՐՄՈՍ** (Μίμνερμος), մ. թ. ա. VII դ. 2-րդ կեսի հույն բանաստեղծ: Ծնվել է Կոլոփոն քաղաքում (Փոքր Ասիա): Մ. համարվում է էրոտիկ պոեզիայի հիմնադիրը հին հուն. գրականության մեջ: Ալեքսանդրյան և հռոմ. բանաստեղծների (Կալլիմաքոս, Տիբուլլոս, Պրոպերտիոս) վրա Մ-ի եղերերգերի ազդեցության հարցը մնում է վիճելի: Բանաստեղծի սիրած կնոջ անունով է կոչվել նրա եղերերգերի ժողովածուն՝ «Նաննո»-ն (պահպանվել են պատառիկներ): «Զմյուռնական» պոեմը լիդիացիների դեմ Զմյուռնիա քաղաքի բնակիչների հերոսական պայքարի մասին է:

**ՄԻՄՈՍ** (< հուն. μίμος— նմանակող, նմանակում), կատակերգակ դերասան Հին Հունաստանում, Հռոմում և Բյուզանդիայում: Դերասանի այս տիպը զարգացել է հատկապես հելլենիզմի դարաշրջանում (III—I դդ.) և դարձել հռոմ., ապա՝ վաղ միջնադարյան առաջավորասիական թատրոնին բնորոշ երևույթ: Մ. են կոչվել նաև հելլենիզմի շրջանի պիեսները, որոնք նախատեսել են մնջկատակի, պարի, երգի ու խոսքի համատեղում: *Հ. Հովհաննիսյան*

**«ՄԻՄՈՍ»**, եռօրյա երգիծական հանդես: Լույս է տեսել 1875—77-ին, Կ. Պոլսում, հայերեն և հայատառ թուրքերեն: Արտոնատեր՝ Ա. Սագայան, խմբագիրներ՝ Հ. Հաճյան, Ն. Պեզիրճյան: Տպագրել է երգիծական հոդվածներ ու բանաստեղծություններ, ծաղրել քաղքենիությունը, օտարամոլությունը, հայ ընտանիքներում տեղ գտած անընդունելի բարքերը: Ծանոթացրել է ազգային հաստատությունների գործունեությանը, տպագրել լուրեր պոլսահայ կյանքից, տեղեկություններ՝ միջազգային իրադարձությունների մասին:

**ՄԻՑԱՄՈՏՈ** Կենձի (ծն. 1908), Ճապոնիայի կոմունիստական շարժման գործիչ: Ճապոնիայի կոմկուսի (ՃԿԿ) անդամ 1931-ից: Ավարտել է (1932) Տոկիոյի համալսարանի տնտեսագիտական ֆակուլտետը: 1930—32-ին մասնակցել է ուսանողական շարժումներին: 1932-ին աշխատել է ՃԿԿ ԿԿ պրոպագանդայի և ագիտացիայի բաժնում: 1933-ին ընտրվել է ՃԿԿ ԿԿ, ԿԿ քարտուղարության և քաղբյուրոյի անդամ: 1933—45-ին եղել է բանտարկության մեջ: 1945-ից ՃԿԿ ԿԿ, 1946-ից՝ քաղբյուրոյի (1955-ից՝ Նախագահության) անդամ: 1946—49-ին՝ ՃԿԿ տեսական օրգան «Զենեյ» ամսագրի խմբագիր: 1947—50-ին՝ կուսակցության վերահսկիչ հանձնաժողովի նախագահ: 1955—58-ին ՃԿԿ ԿԿ քարտուղար, «*Ակահատա*» թերթի գլխավոր խմբագիր (մինչև 1957-ը): 1958—1970-ին՝ ՃԿԿ ԿԿ գլխավոր քարտուղար, 1964-ից՝ Նախագահության մշտական բյու-

բոյի անդամ, 1970-ից՝ ՃԿԿ ԿԿ Նախագահության նախագահ:

**ՄԻՅՈ** (Milhaud) Դարիուս (4.9.1892, Էքս-ան-Պրովանս—22.6.1974, Ժնև), ֆրանսիացի կոմպոզիտոր, դիրիժոր, երաժշտական քննադատ: Ֆրանս. Գեղեցիկ արվեստների ակադեմիայի անդամ (1956): «Վեցյակ» ստեղծագործական խմբի անդամ: 1920-ական թթ. հանդես է եկել որպես դիրիժոր (1926-ին՝ Մոսկվայում և Լենինգրադում): 1936-ից մասնակցել է «Ժողովրդական երաժշտական ֆեդերացիա»-ի աշխատանքներին: Ֆաշիստական օկուպացիայի տարիներին (1940—44) ապրել է ԱՄՆ-ում: 1945-ից Փարիզի կոնսերվատորիայի պրոֆեսոր էր՝ շարունակելով մանկավարժական գործունեությունը ԱՄՆ-ի երաժշտական ուսումնական հաստատություններում: Հեղինակ է «Ցուլը տանիքի վրա» (1919), «Երկնագույն ճեպընթաց» (1924), «Քրիստափոր Կոլումբոս» (1928), «Բոլիվար» (1943) և այլ օպերաների, «Կրակե դղյակ» կանտատի (1954), 12 սիմֆոնիաների, 18 լարային կվարտետների, կինոֆիլմերի երաժշտության, ֆրանս., բրազ., նեգրական, հրեական երգերի մշակումների, ինչպես և գրքերի («Հուշագրություններ») ու հոդվածների:

**ՄԻՆ**, կայսերական դինաստիա Չինաստանում 1368—1644-ին: Հիմնվել է մոնղ. Յուան դինաստիան տապալելուց հետո: Մ-ի դինաստիայի կայսրերը XV դ. սկզբին վարել են նվաճողական քաղաքականություն: 1407-ին չին. զորքերը գրավել են Վիետնամը, ծովային 7 արշավախումբ է ուղարկվել հվ. ծովեր և Հնդկական օվկիանոս: Կայսր Ու-ցզունը 1521-ին արգելել է եվրոպացիների մուտքը Չինաստան և փակել նրանց համար բոլոր նավահանգիստները՝ բացի Մակաոյից: Սոցիալական հակասությունների սրումը և դասակարգային պայքարի վերելքը XVII դ. 20-ական թթ. հանգեցրել են ապստամբության: Ապստամբները 1644-ին գրավել են մայրաքաղաք Պեկինը և տապալել Մ-ի դինաստիան: Մ-ի դինաստիայի կառավարման վերջին շրջանում առաջին հարաբերություններն են հաստատվել Ռուսաստանի և Չինաստանի միջև:

**ՄԻՆԱՆԳԿԱԲԱՈՒՆԵՐ**, ժողովուրդ: Բնակվում են Սումատրա կղզու արմ. և կենտրոնական, ինչպես նաև Ինդոնեզիայի մի շարք այլ շրջաններում ու նրա սահմաններից դուրս (Մալայզիայում): Թիվը՝ ավելի քան 4 մլն (1973): Լեզուն մոտ է ինդոնեզերենին, պատկանում է *մալայա-պոլինեզյան լեզուներին*: Դավանում են մահմեդականություն: Այժմյան Սումատրայի ժողովուրդների զգալի մասը ծագմամբ կապված է Մ-ի հետ: XIX դ. 1-ին կեսին Մ. պայքարում էին հոլանդացիների ներխուժման դեմ: Հիմնականում զբաղվում են բրնձի մշակությամբ, XX դ. սկզբից՝ տեխ. կուլտուրաների (կաուչուկ են) արտադրությամբ, անասնապահությամբ ու զանազան արհեստներով: Մ-ի մոտ բուռն թափով զարգացել են կապիտալիստական հարաբերությունները, միաժամանակ պահպանվում են համայնքն ու մայրատոհմային կարգերի շատ գծեր: Մ. խոշոր դեր են կատարում Ինդոնեզիայի քաղ. և մշակութային կյանքում:

**ՄԻՆԱՍ** (ծն. և մահ. թթ. անհտ.), միջնադարյան հայ ճարտարապետ: 1248-ին կառուցել է *Հաղարծինի* վանքի սեղանատունը (շինարարական արձանագրությունը շենքի հվ. մուտքի շրջակալին է): Ճարտարապետի անունը փորագրված է սեղանատան արմ. երդիկի հս-արլ. անկյունում, իսկ անվանատառը՝ շենքի երեսապատման քարերի վրա: Հաղարծինի սեղանատունը (ինչպես և նույն դարի Հաղպատի սեղանատունը) ունի ինքնատիպ, միայն Հայաստանում հանդիպող, ժող. բնակելի տան ձևերից բխող հորինվածք, այն հայկ. շինարվեստի լավագույն ստեղծագործություններից է, և նրա հեղինակ Մ. իրավամբ դասվում է միջնադարյան հայ ականավոր ճարտարապետների շարքը:

*Գրկ.* Բարխուդարյան Ս., Միջնադարյան հայ ճարտարապետներ և քարգործ վարպետներ, Ե., 1963: Халпахчьян О. Х., Гражданское зодчество Армении, М., 1971.

**ՄԻՆԱՍ** (ծն. և մահ. թթ. անհտ.), XV դարի հայ մանրանկարիչ, *Վասպուրականի մանրանկարչության դպրոցի* ներկայացուցիչ: Բնակության հիմնական վայրը հավանաբար եղել է Արճեշը, սակայն նա շրջագայել է նաև Վասպուրականի այլ քաղաքներում ու վանքերում: Ենթադրվում է, թե Մ. եղել է Վասպուրականի առաջին «պրոֆեսիոնալ» նկարիչը, որը նկարազարդել է միայն ձեռագրեր: Նրա մոտ ձեռագրեր են բերել Խառաբաստավանքից, Վանից, Արծկեից, Կտուցից, Արգելանից, Ոստանից և ուրիշ վայրերից: Մ. իր ժամանակին մեծ հռչակ է վայելել (հորջորջվել է «հռչակավոր և անվանի նկարիչ», «քաջ նկարող» են): Մ-ի առաջին աշխատանքը թվագրվում է 1433, վերջինը՝ 1483: Նրա

Մինաս. «Ծնունդ և Մոգերի երկրպագությունը», մանրանկար 1450-ին պատկերազարդված Ճաշոցից (Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարան, ձեռ. № 982)



ծաղկազարդված մատյաններից 19 գտնվում է Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանում (ավետարաններ, ճաշոցներ, ճառընտիրներ, հայսմավուրքներ, շարակնոցներ են): Ձեռագրերի հիշատակարաններում Մ. տեղեկություն է թողել իր ուսուցիչների (Մկրտիչ Խերապետ, Թումա) և աշակերտների (Կարապետ և Մուրադ Աղթամարցիներ) մասին: Մ-ի ստեղծագործություններով նոր փուլ է սկսվել Վասպուրականի մանրանկարչության դպրոցում: Նախկին գծամաներային, փոքր-ինչ պարզունակ, ազատ փոխակերպումները իրենց տեղը զիջում են կանոնիկ, մշակված ձևերին: Մ. դիմել է բարդ հորինվածքների, գունազարդային հարուստ արտահայտչամիջոցների (օգտագործել է նաև ոսկի), որոնց շնորհիվ հասել է խորը բանաստեղծականության:

*Գրկ.* Հայկական մանրանկարչություն. Վասպուրական, Ե., 1978, էջ 245:

*Հ. Հակոբյան*

**ՄԻՆԱՍ** (ծն. և մահ. թթ. անհտ.), XVII դարի հայ նկարիչ: Ծնվել է Նոր Ջուղայում: Գեղարվեստական կրթություն ստացել է Հալեպում: Մերժելով Սեֆի I շահի պալատական նկարիչ դառնալու հրավերը՝ ստեղծագործել է հայրենի քաղաքում:



Մինաս. Հակոբջան Վելիջանյանի դիմանկարը (XVII դ., Ամենափրկիչ վանքի թանգարան, Նոր Ջուղա)

Ձևավորել է ապարանքներ (պահպանվել են հատվածներ): Հեռանալով մանրանկարչության դասական սկզբունքներից՝ Մ. մեծ տեղ է հատկացրել բուսական նախշազարդերով հարուստ մոտիվներին, որոնք ընդգրկել են կենցաղային տեսարաններ: Նրա բնանկարներն ու նատյուրմորտները, որոնք այդ ժանրերի առաջին օրինակներն էին հայ իրականությունում, արլ. արվեստի շքեղության կնիքն ունեն: Ժանրային սահմանազատումները, հաստոցային նկարչության սկզբունքները Մ-ի ստեղծագործություն են մուտք գործել եվրոպական արվեստից և ստացել տեղական գունա-պլաստիկական արտահայտչականություն: Մ-ի ստեղծագործությունում զգալի տեղ է գրավում դիմանկարը: Պահպանվել են Ոսկան և Հակոբջան Վելիջանյանների դիմանկարները (Նոր Ջուղա, Ամենափրկիչ վանքի թանգարան), որոնք աչքի են ընկնում հոգեվիճակների զուսպ արտահայտչականությամբ և գունապատ-

կերի դեկորատիվությամբ: Մ. նկարազարդել է նաև գրքեր: Նոր Ջուղայում Մ. արվեստանոց և աշակերտներ է ունեցել, որոնց հետ որմնանկարներ է կատարել տեղի մի շարք եկեղեցիներում: Աշխատանքներ է կատարել նաև Սպահանի պալատներում և ապարանքներում:

*Գրկ.* Առաքել Դավրիժեցի, Պատմութիւն, Վաղ-պատ, 1896: Ղազարյան Մ., Հայ կերպարվեստը XVII—XVIII դարերում, Ե., 1974: *Մ. Ղազարյան*

**ՄԻՆԱՍ** (Մինասյան) Իսկուհի (ծն. 1884, Կ. Պոլիս), հայ գրող: Նախնական կրթությունն ստացել է Կ. Պոլսի իտալ. օրիորդաց դպրոցում: 1900—01-ին տպագրել է առաջին գործերը: Մ-ի նախընտրած ժանրերն են արձակ բանաստեղծությունը և նովելը: Գրել է ֆրանս.: «Վենետիկյան մարգարիտներ» (1914), «Հեծեծանքներ», «Ուժգին ժամեր», «Ինչ որ մեռնում է», «Աթենքի վարդերը», «Իտալիայի լուսաստվերը» (1928) ժողովածուներում գերիշխող թախիծը հոռետեսության հետևանք չէ, այլ լույսին, գեղեցկին հասնելու յուրօրինակ աստիճան: «Ապրել» (1930) ժողովածուի նովելներից մեկը պատկերում է Գ. Զոհրապի կյանքը: Վերջինիս թարգմանությամբ Մ-ի որոշ նովելներ լույս են տեսել հայ մամուլում: *Ն. Վարդանյան*

**ՄԻՆԱՍ Ա ԱԿՆԵՐՑԻ** (ծն. թ. անհտ.— 12.5.1753), Հայոց կաթողիկոս 1751-ից: Սկզբում եղել է Մշո Ս. Կարապետ վանքի առաջնորդ, 1749—51-ին՝ Կ. Պոլսի հայոց պատրիարք: Կաթողիկոս դառնալով Էջմիածնի միաբանությունում վերջ է տվել հոգևորականների միջև բուն դրած թշնամանքին:

**ՄԻՆԱՍ ԱՄԴԵՑԻ**, Մինաս վարդապետ Ամդեցի (ծն. թ. անհտ., Ամիդ—5.12.1704, Երուսաղեմ), հայ մատենագիր, գրիչ, եկեղեցական գործիչ: Եղել է Եվդոկիայի եպիսկոպոսական թեմի առաջնորդ (1686—88), Երուսաղեմի հայոց պատրիարք (1690—96, 1698—1702, 1704): Գրչագրել է Սամուել Անեցու «Ժամանակագրությունը» և Մխիթար Գոշի «Դատաստանագիրքը»: Հրատարակել է (1700—01, առաջին անգամ) Գրիգոր Նարեկացու «Մատեան ողբերգութեան» երկի ամբողջական բնագիրը և նրա ներբողյանները: Գրել է (1698) «Ազգաբանութիւն Հայոց» երկը (1870, 2 հրտ.), որի սկզբի մասը հայոց պատմության (Հայկից մինչև Լևոն Զ), իսկ շարունակությունը հռոմ. ու բյուզանդական կայսրերի համառոտ ժամանակագրությունն է: Գրել է (1680—1704) նաև «Օրագրութիւն» (անտիպ), որն ունի ինքնակենսագրական արժեք և XVII դ. վերջին քառորդի ու XVIII դ. սկզբի հայ հասարակական-քաղաքական կյանքի մասին վավերական սկզբնաղբյուր է՝ տեղագրական հարուստ տվյալներով:

*Գրկ.* Չամչյան Մ., Պատմութիւն Հայոց, հ. 3, Վնտ., 1786: Օրմանյան Մ., Ազգապատում, մաս 2, ԿՊ, 1914: Քյոմուրճյան Ե. Չ., Օրագրութիւն, Երուսաղեմ, 1939: *Պ. Խաչատրյան*

**ՄԻՆԱՍ ԹՈԽԱԹՑԻ** [Լովանդացի, Լեհացի, 1510, Թոխաթ (Եվդոկիա)— 1621 կամ 1622], հայ միջնադարյան տաղասաց, գրիչ: 1540-ին գաղթել է Կամենից, ապա տեղափոխվել Սուչավա: 1563-ին անցել է Լեմբերգ (այժմ՝ Լվով), եղել Գրիգոր Վանեցի արքեպիսկոպոսի քարտուղարը: Ընդօրինակել է ձեռագրեր: Նրա «Ողբ ի վերայ Օլախաց երկրի հայերուն» հայրենասիրական ծավալուն բանաստեղծության մեջ պատկերված են Մոլդավիայի թագավոր Շտեֆան Ռարեշի (իշխել է 1551—52-ին) հալածանքներն ընդդեմ հայերի: Ողբը, որ գրել է որպես դեպքերի ականատես, սկզբնաղբյուր է Մոլդավիայի հայերի պատմության ուսումնասիրման համար: Մ. Թ-ու գործերից է նաև «Գովասանք հերիսի» երգիծական ոտանավորը: Ստեղծագործել է գրաբար՝ աշխարհաբարի տարրերով, երբեմն էլ՝ ժամանակի խոսակցական լեզվով:

*Գրկ.* Ալիշան Ղ., Կամենից. Տարեգիրք հայոց Լեհաստանի և Ռումենիոյ, Վնտ., 1896, էջ 19—27: Ակինյան Ն., Հինգ պանդուխտ տաղասացներ, Վնն., 1921, էջ 57—114: Խաչատրյան Պ., Հայ միջնադարյան պատմական ողբեր (ԺԴ—ԺԷ դդ.), Ե., 1969: Սահակյան Հ., Ուշ միջնադարի հայ բանաստեղծությունը (16—17-րդ դդ.), Ե., 1975: *Ա. Դոլուխանյան*

**ՄԻՆԱՍ ԺԵՐԱԻՍ** (Minas Gerais), նահանգ Բրազիլիայի հարավ-արևելքում: Տարածությունը 582,6 հզ. *կմ*² է, բն՝ 13,68 մլն (1980): Վարչական կենտրոնը՝ Բելու Հորիզոնտի: Տնտեսապես զարգացած և խիտ բնակեցված նահանգներից է: Տնտեսության հիմքը լեռնահանքային արդյունաբերությունն է, սև և գունավոր մետալուրգիան: Մ. Ժ-ում է կենտրոնացած երկրի ոսկու և ալմաստի հանույթի 80—90%-ը, երկաթի հանքաքարի, բոքսիտների և գրաֆիտի հանույթի մոտ 100%-ը: Արտադրվում է պողպատի մոտ 40%-ը, մետաղական ցինկի 50%-ը, ալյումինի ավելի քան 60%-ը, երկաթամիահալվածքի 75%-ը, նիկելի 100%-ը: Զարգացած է մետաղամշակման և մեքենաշինական, նավթաքիմիական, ցեմենտի, տեքստիլ ու սննդի արդյունաբերությունը: Մշակում են սուրճ, շաքարեղեգ, ծխախոտ, ցիտրուսային, հատիկային և այլ կուլտուրաներ: Զբաղվում են նաև անասնապահությամբ:

**ՄԻՆԱՍ ԿԱՄՍԱՐԱԿԱՆ**, Մինաս Երևանցի (ծն. և մահ. թթ. անհտ.), XIX դ. տոմարագետ: 1801-ին կազմել է «Լուսավորիչ» տոմարը, որի տարեսկիզբ է ընդունվում «Քրիստոսի ծննդյան օրը»՝ հունվարի 6-ը: Ամսանունները հայկական հեթանոսական տոմարինն են (տես *Հայկական օրացույց*): Նահանջ տարվա լրացուցիչ օրը ավելացվում է հոռի ամսվա վերջում: «Լուսավորիչ» և հուլյան տոմարի ամսանունները գտնվում են հետևյալ համապատասխանության մեջ.

| | | | |
|---|---|---|---|
| նավասարդի | 1 | հունվարի | 6 |
| հոռիի | 1 | փետրվարի | 1 |
| սահմիի | 1 | մարտի | 3 |
| տրեի | 1 | ապրիլի | 2 |
| քաղոցի | 1 | մայիսի | 2 |
| արացի | 1 | հունիսի | 2 |
| մեհեկանի | 1 | հուլիսի | 2 |
| արեգի | 1 | օգոստոսի | 2 |
| ահեկանի | 1 | սեպտեմբերի | 1 |
| մարերիի | 1 | հոկտեմբերի | 2 |
| մարգացի | 1 | նոյեմբերի | 1 |
| հրոտիցի | 1 | դեկտեմբերի | 2 |
| ավելյացի | 1 | հունվարի | 1 |

Տարեթվերը հաշվվում են հիմնականում ըստ «Քրիստոսի ծննդյան թվականի» («Փրկչական թվական»), որոշ դեպքերում՝ ըստ «Խաչելության թվականի» (33 թ.): *|Բ. Թումանյան|*

**ՄԻՆԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ** (Գասպարյանց, Արթվինցի, ծն. և մահ. թթ. անհտ.), XVIII դարի հայ լուսավորչական գործիչ, մաթեմատիկայի ուսուցիչ, Մխիթարյան միաբանության անդամ: Հրատարակել է «Նոր գիւտ կամ Գործ համարողական արհեստին» (1787) գործնական հաշիվներ կատարելու մաթեմատիկայի ձեռնարկը վաճառականների համար:

**ՄԻՆԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ**, Տիգրանյան, Խարբերդցի (մոտ 1658—12.5.1740, Մոսկվա), հայ ազգային-ազատագրական շարժման գործիչ: *Իսրայել Օրու* մերձավոր զինակիցը: 1680-ին ընդունել է կուսակրոնություն, 1684-ին դարձել Արցախի Մեծարանք գավառի Ս. Հակոբա վանքի վանահայր: 1699-ին մասնակցել է *Անգեղակոթի ժողովին*, որտեղ նշանակվել է Իսրայել Օրու ուղեկիցն ու գործընկերը՝ վերջինիս եվրոպական առաքելությունում: Իսրայել Օրու հետ եղել է Պֆալցում (1699), Ֆլորենցիայում և Հռոմում (1700), Մոսկվայում (1701): Մասնակցել է Ռուսաստանի օգնությամբ Հայաստանն ազատագրելու նպատակով ռուս. արքունիքի հետ վարվող բանակցություններին: Իսրայել Օրու մահից (1711) հետո շարունակել է նրա գործը, հիմնականում միջնորդի դեր կատարել ռուս. կառավարության և հայ ազատագրական գործիչների միջև: Ռուս. կառավարության հանձնարարությամբ Պետրոս I-ի պարսկ. արշավանքից առաջ, 1715—16-ին եղել է Անդրկովկասում, այցելել Գանձասար և Էջմիածին: 1716-ին Աղվանից կաթողիկոս Եսայի Հասան-Ջալալյանը Մ. Վ-ին ձեռնադրել է եպիսկոպոս և նշանակել Ռուսաստանի հայերի հոգևոր առաջնորդ: Մասնակցել է Պետրոս I-ի պարսկ. արշավանքին (1722): 1720-ական թթ. ծավալված հայ ազատագրական շարժումների ժամանակ, ռուս. արքունիքում ներկայացրել և պաշտպանել է ազատագրական պայքարի ելած հայ ժողովրդի շահերը: 1740-ի ապրիլին ընդունել է ուղղափառություն: *Վ. Դիլոյան*

**ՄԻՆԱՍՅԱՆ** Աշխեն Կարապետի [20.11. 1902, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)—13.6.1980, Երևան], հայ սովետական բուսաբույծ-սելեկցիոներ: Կենսաբ. գիտ. դ-ր (1946): Ավարտել է Երևանի համալսարանի գյուղատնտ. ֆակուլտետը (1926): 1929—35-ին աշխատել է ՀՍՍՀ ԳԱ բուսաբանական այգում, որտեղ կազմակերպել և ղեկավարել է սերմստուգիչ առաջին լաբորատորիան: 1951—56-ին աշխատել է ՀՍՍՀ ԳԱ բույսերի գենետիկայի և սելեկցիայի ինստ-ում, 1956—74-ին՝ ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության երկրագործության ԳՀԻ-ում: Գիտական աշխատանքները վերաբերում են գարու, ցորենի, եգիպտացորենի, երկհար թավոտ վիկի տեսակակազմի, փոփոխականության, ագրոկենսաբանական առանձնահատկություններին:

*Երկ.* Ячмени Армении, Е., 1961.

**ՄԻՆԱՍՅԱՆ** Գուրգեն Արմենակի [ծն. 16.6. 1907, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինա-

կան)], հայ սովետական բժիշկ, սպորտային բժշկության և բուժական ֆիզկուլտուրայի մասնագետ: Բժշկ. գիտ. դ-ր (1968), պրոֆեսոր (1969), ՀՍՍՀ վաստ. բժիշկ (1963): ՍՄԿԿ անդամ 1943-ից: 1935-ին ավարտել է Երևանի բժշկ. ինստ-ը, աշխատել որպես նույն ինստ-ի ֆիզիկական դաստիարակության և բուժական ֆիզկուլտուրայի, բժշկ. վերահսկողության և բուժական ֆիզկուլտուրայի ամբիոնների վարիչ, 1945—53-ին՝ Երևանի ֆիզկուլտուրայի ինստ-ի հիգիենայի և սպորտային բժշկության ամբիոնի վարիչ: 1976-ից դասախոսում է Լենինականի մանկավարժական և Երևանի բժշկ. ինստ-ներում: Մ-ի աշխատանքները վերաբերում են ֆիզիկական վարժությունների բուժիչ նպատակով կիրառման գիտական հիմնավորմանը, հենաշարժական ապարատի վնասվածքների ժամանակ բուժական ֆիզկուլտուրայի արդյունավետության բարձրացման մեթոդներին ու միջոցներին (նրա մշակած բուժական ֆիզկուլտուրայի 16 գործիք երաշխավորվել են զանգվածային արտադրության): Մ. ՀՍՍՀ առողջապահության մինիստրության բժշկ. վերահսկողության բուժական ֆիզկուլտուրայի գծով գլխավոր մասնագետն է:

*Երկ.* Բուժական ֆիզկուլտուրայի հիմունքներ, Ե., 1949: Երեխաների կեցվածքը, Ե., 1967: Аппаратура по лечебной гимнастике, Е., 1961.

**ՄԻՆԱՍՅԱՆ** Լևոն Ժակի (ծն. 1905, Կ. Պոլիս), հայ նկարիչ: Լրագրող-հրատարակիչ Ժակ Մինասյանի և գրող Մինաս Իսկուհու որդին: 1921-ին տեղափոխվել է Վենետիկ, սովորել Վենետիկի Գեղարվեստի ակադեմիայում (մինչև 1926-ը), նաև նկարիչ Ալեսանդրո Միլեզիի արվեստանոցում: Մ-ի սկզբնական շրջանի աշխատանքներին բնորոշ է իրականության հավաստի պատկերումը: 1948-ից ստեղծում է ֆանտաստիկ ձևերով, բանաստեղծականությամբ տոգորված նկարներ («Պատուհանը ծովի վրա», «Լքված կարուսել», «Իրերը արշալույսին», «Կոմպոզիցիա» ևն): Անհատական ցուցահանդեսներ է ունեցել Իտալիայում: 1930-ից մասնակցել է Վենետիկի բիենալեին, Եվրոպայի երկրներում (Գերմանիա, Ֆրանսիա, Դանիա, Նորվեգիա ևն) կազմակերպված միջազգային ցուցահանդեսների, արժանացել բազմաթիվ մրցանակների: Մ-ի գործերը տեղ են գտել Վենետիկի Ժամանակակից արվեստի միջազգային պատկերասրահում, Միլանի Ժամանակակից արվեստի ազգային պատկերասրահում, Պադուայի Չիվիկո թանգարանում և այլուր: 1958-ին Պադուայում հրատարակվել է «Լևոն Մինասյանի գծանկարները» ալբոմը:

**ՄԻՆԱՍՅԱՆ** Կարապետ Հարությունի (22.3.1908, Կարս —24.1.1966, Երևան), հայ բեմանկարիչ: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1956): Սովորել է Թիֆլիսի Գեղարվեստի ակադեմիայում (1925—29) և Լենինգրադի գեղանկարչության, քանդակագործության և ճարտարապետության ինստ-ում (1931—36): 1936—38-ին աշխատել է Լենինականի դրամատիկական թատրոնում (գլխ. նկարիչ), 1938—44-ին՝ Երևանի Ստանիսլավսկու անվ. ռուս. թատրոնում, Հայրենական մեծ պատերազմից հետո՝ Երևանի Սունդուկյանի անվ. դրամատիկական ու Սպենդիարյանի անվ. օպերայի և բալետի թատրոններում: Մ-ի ստեղծագործություններին բնորոշ է ծավալա-տարածական լուծումը, բեմական գործողության բովանդակությանը համահունչ միջավայրի արտահայտիչ մեկնաբանումը: Ձևավորումներից են բազմաթիվ ներկայացումներ՝ Վ. Շեքսպիրի «Վենետիկի վաճառականը» կատակերգությունը (1940), Շ. Գունոյի «Ռոմեո և Ջուլիետ» (1955), Ա. Տիգրանյանի «Դավիթ Բեկ» (1952) օպերաները, Գ. Եղիազարյանի «Սևան» բալետը (1956) ևն: Հեղինակ է նաև դիմանկարների:

**ՄԻՆԱՍՅԱՆ** Հարություն Հովհաննեսի [ծն. 27.2.1920, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)], հայ սովետական վիրաբույժ: ՀՍՍՀ վաստակավոր բժիշկ (1963): Բժշկ. գիտ. թեկնածու (1953): ՍՄԿԿ անդամ 1954-ից: Ավարտել է Երևանի բժշկ. ինստ-ի բուժական ֆակուլտետը (1941): Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: 1953-ից աշխատում է Երևանի բժշկ. ինստ-ի ֆակուլտետային վիրաբուժության ամբիոնում (1962-ից՝ դոցենտ): Եղել է Երևան քաղաքի գլխավոր վիրաբույժ (1954—56, 1963—76): 1965-ից բժշկ. ինստ-ի ֆակուլտետային վիրաբուժության ամբիոնի մասնաճյուղի («Մալաթիա» հիվանդանոցում) վարիչն է: Մ. ՀՍՍՀ-ում առաջիններից մեկն է գործնականում կիրառել ինտուբացիոն նարկոզը, առաջինը կատարել կերակրափողահատում (1954): Ստամոքսի և 12-մատնյա աղիքի խոցային հիվանդության բուժման ժամանակ կատարել է սելեկտիվ պրոքսիմալ վագոտոմիա (1976) և ներդրել ՀՍՍՀ վիրաբուժական պրակտիկայում:

Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

**ՄԻՆԱՍՅԱՆ** Հովհաննես Մարտիրոսի (10.1.1928, Լենինական —5.7.1972, Երևան), հայ սովետական նկարիչ: ՀՍՍՀ վաստ. նկարիչ (1970): 1944—46-ին սովորել է Փ. Թերլեմեզյանի անվ. գեղարվեստի ուսումնարանում, 1949—54-ին՝ Լենինգրադի Ի. Ե. Ռեպինի անվ. գեղանկարչության, քանդակագործության և ճարտարապետության ինստ-ում (1955—58-ին՝ նույն ինստ-ի ասպիրանտուրայում): Մ. բազմաժանր նկարիչ է: Աշխատել է հաստոցային և մոնումենտալ-դեկորատիվ գեղանկարչության ասպարեզներում: Ինչպես արդիական, այնպես էլ պատմական թեմատիկայով ստեղծված նրա աշխատանքներին բնորոշ են գեղանկարչության ազգային ավանդների և ժամանակակից ձևամտածողության զուգորդումները, առողջ կենսալիությունը, էպիկականությունը, գույնի և ծավալի կառուցվածքային ներդաշնակությունը («Սրինգ», 1963, «Վահագն վիշապաքաղ», 1967, «Հիդրոշինարարներ», 1970, «Աշտարակ», 1970, «Վերածնունդ», 1971, կտավները, «Փառք հայ գրի ու դպրության» որմնանկարաշարը Օշականի Մեսրոպ Մաշտոց եկեղեցում, 1962—65, հեղինակակից՝ Հ. Մամյան, Երևանի մաթեմատիկ. մեքենաների գիտահետազոտական ինստ-ի խճանկարաշարը, 1968—70): Մասնակցել է երիտասարդության համաշխարհային V (1955, Վարշավա), VI (Մոսկվա, 1957), VII (Վիեննա, 1959) փառատոներին, հանրապետական, միութենական, միջազգային ցուցահանդեսների: 1959-ին, 1963-ին և ետմահու՝ 1974-ին Մ-ի անհատական ցուցահանդեսները կազմակերպվել են Երևանում:



Հ. Մինասյան. «Վահագն վիշապաքաղ» (1967, Ժամանակակից արվեստի թանգարան, Երևան)

*Պ. Հայթայան*

**ՄԻՆԱՍՅԱՆ** Մուշեղ Մինասի (ծն. 27.8. 1902, Գորիս), սովետական բանակի գեներալ-մայոր (1961): Պատմ. գիտ. դ-ր (1958): ՍՄԿԿ անդամ 1922-ից: Ավարտել է Երևանի համալսարանի իրավա-տնտեսագիտական ֆակուլտետը (1925), Գլխավոր շտաբի բարձրագույն ռազմ. ակադեմիային կից դոկտորանտուրան (1956): 1921—23-ին կոմերիտական աշխատող է եղել Զանգեզուրի գավկոմում և Հայաստանի ՀԼԿԵՄ Կենտկոմում: 1923-ից անցել է զինվորական ծառայության: Հայրենական մեծ պատերազմի ժամանակ Արևմտյան ռազմաճակատում նախ վարել է քաղաշխատանք, իսկ 1943-ի վերջից եղել 1-ին Մերձբալթյան ռազմաճակատում տանկային բրիգադի հրամանատարի տեղակալ: Մասնակցել է Բելոռուսիայի և Մերձբալթիկայի ազատագրմանը: Պատերազմից հետո Մ. Վ. Ֆրունզեի անվ. ռազմ. ակադեմիայում դասավանդել է ռազմ. արվեստի պատմություն, 1958-ից աշխատանքի է անցել ՍՄԿԿ ԿԿ-ին կից մարքսիզմ-լենինիզմի ինստ-ում: Մասնակցել է «Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի պատմությունը 1941—1945 թթ.» վեցհատորյակի հրատարակմանը (1960—65): «Հաղթանակը Բելոռուսիայում» (1952), «Հարավ-Արևելյան Եվրոպայի ժողովուրդների ազատագրումը» (1967, ռուս.) ևն գրքերի հեղինակ է: Պարգևատրվել է Կարմիր դրոշի 3, Հայրենական պատերազմի I աստիճանի շքանշաններով և մեդալներով:



Մ. Մ. Մինասյան

*Ե. Խալեյան*

**ՄԻՆԱՍՅԱՆ** Պետրոս (9.10.1799, Կ. Պոլիս —19.8.1867, Փարիզ), հայ դրամատուրգ, գրականության մեջ կլասիցիստական ուղղության տեսաբան: Մխիթարյան միաբանության անդամ (1825-ից): 1835-ից

Մուրատ-Ռափայելյան վարժարանի ուսուցիչ՝ նախ Պադուայում, ապա Փարիզում: 1846-ին մեկնել է Կ. Պոլիս և Տրապիզոն՝ միսիոներական աշխատանքի: Կ. Պոլսում հիմնել է Համազգյաց ընկերությունը (1846), կազմել կանոնադրությունը: Մ-ի «Խոսրով Մեծ» և «Սմբատ Առաջին» ողբերգությունները լույս են տեսել «Թատերգութիւնք» (1845) խորագրով: Նյութը վերցրել է Մովսես Խորենացուց: Արտահայտել է ազատասիրական գաղափարներ, քննադատել ազգային տարաձայնությունները: Նա թատրոնը համարել է մարդկության զարգացման ազդակներից մեկը:

*Գրկ.* Թերզիբաշյան Վ., Հայ դրամատուրգիայի պատմություն, [գիրք 1], Ե., 1959: Ստեփանյան Գ., Ուրվագիծ արևմտահայ թատրոնի պատմության, հ. 1, Ե., 1962: *Խ. Կարաղեկյան*

**ՄԻՆԱՍՅԱՆ** Ռաֆիկ Արմենակի [ծն. 15.5. 1926, բանավան Կավարտ (այժմ՝ ՀՍՍՀ Ղափան քաղաքի տարածքում)], սովետական կուսակցական և պետական աշխատող: ՍՄԿԿ անդամ 1946-ից: Ավարտել է Երևանի համալսարանի տնտեսագիտական ֆակուլտետը (1958) և ՍՄԿԿ ԿԿ-ին կից կուսակցական բարձրագույն դպրոցը (1961): 1942—49-ին աշխատել է Ղափանի պղնձահանքերում, որպես փականագործ, կոմպրեսորային կայանի մեքենավար, նորմավորող, 1949-ից՝ ՀԿԿ Ղափանի շրջկոմում, Ղափանի շրջանային «Պղնձի համար» թերթի խմբագրությունում: 1956—1959-ին եղել է Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի կուսկոմիտեի քարտուղար, 1961—63-ին՝ ՀԿԿ ԿԿ-ում պատասխանատու կազմակերպիչ, 1963—1978-ին՝ ՀԿԿ Ղափանի շրջկոմի առաջին քարտուղար: 1978-ից՝ ՀՍՍՀ բնակարանային-կոմունալ տնտեսության մինիստր: Եղել է ՍՄԿԿ XXIII և ՀԿԿ XIX—XX, XXIII—XXVII համագումարների պատգամավոր, ՀՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության անդամ (1978), ՀՍՍՀ VII—X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: ՀԿԿ ԿԿ անդամ է 1964-ից: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի 3, Ժողովուրդների բարեկամության շքանշաններով:

**ՄԻՆԱՍՅԱՆ** Սիլվա (Զիգֆրիդա) Արշավիրի (ծն. 2.7.1926, Երևան), բալետի հայ սովետական արտիստուհի: ՀՍՍՀ ժող. արտիստուհի (1963): 1944-ին ավարտել է Երևանի պարարվեստի ուսումնարանը, վերապատրաստվել Մոսկվայի պարարվեստի ուսումնարանում: 1946-ից՝ Երևանի օպերայի և բալետի թատրոնի մենապարուհի: Կատարել է ավելի քան 30 դերապար: Լավագույններից են՝ Խանդութ («Խանդութ», ըստ Սպենդիարյանի երաժշտ.), Գայանե, Էգինա (Խաչատրյանի «Գայանե», «Սպարտակ»), Զարեմա (Ասաֆևի «Բախչիսարայի շատրվանը»), Միրթա (Ադանի «Ժիզել»): Մ-ի արվեստին բնորոշ է կատարողական բարձր տեխնիկան և ազգային վառ ինքնատիպությունը: *Գ. Ստեփանյան*

**ՄԻՆԱՍՅԱՆՑ** Թադևոս Սերգեյի (ծն. 23.3. 1912, Բաքու), սովետական պետական աշխատող: ՍՄԿԿ անդամ 1942-ից: Ավարտել է Մոսկվայի Պոդբելսկու անվ. ինժեներատեխնիկական ակադեմիան (1937): Կապի բնագավառում աշխատում է 1937-ից: Եղել է Ալմա Աթայի կապի գրասենյակի պետի տեղակալ, 1938-ից՝ Հարավային Ղազախստանի կապի վարչության պլանֆինբաժնի վարիչ, 1944-ից՝ Կեմերովոյի մարզի կապի վարչության պետ, 1948—53-ին՝ կապի հայկ. վարչության պետ: 1955-ից Մ. ՀՍՍՀ կապի մինիստրն է: ՀԿԿ ԿԿ-ի անդամ է 1964-ից: Եղել է ՀԿԿ XIX, XXI, XXIII—XXVII համագումարների պատգամավոր և ՀՍՍՀ V—X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Պարգևատրվել է Լենինի և Հոկտեմբերյան հեղափոխության շքանշաններով:

**ՄԻՆԱՍՈՎ** Ռոդիոն Իվանի [1896, գ. Ալտանի (այժմ՝ Չիտայի մարզում)—1958], ինտենդանտական ծառայության գեներալ-մայոր (1945): ՍՄԿԿ անդամ 1920-ից: Ծնվել է աքսորված ղարաբաղցի նավթագործի ընտանիքում: Ավագ ենթասպայի կոչումով մասնակցել է առաջին համաշխարհային պատերազմին: 1917-ի փետրվարին հեղափոխական գործունեության համար վտարվել է ցարական բանակից: Քաղաքացիական պատերազմի ժամանակ մտել է «Սմոլնի» պարտիզանական ջոկատը, կռվել հակահեղափոխական ուժերի դեմ: 1921—37-ին ծառայել է Օմսկի, 1937—41-ին՝ Անդրբայկալյան ռազմ. օկրուգներում: Հայրենական մեծ պատերազմի ժամանակ եղել է Անդրբայկալյան ռազմաճակատի ֆինանսական մասի պետը: Մասնակցել է իմպերիալիստական Ճապոնիայի ջախջախմանը: Պատերազմից հետո ծառայել է Անդրբայկալյան-Ամուրյան, ապա՝ Հեռավորարևելյան ռազմ. օկրուգների շտաբներում: Պարգևատրվել է Լենինի, Կարմիր դրոշի 2, Հայրենական պատերազմի I աստիճանի շքանշաններով:

**ՄԻՆԱՍՈՎԻՉ** (Minasowicz) Յան Կլեմենս (1797—1854), հայազգի լեհական նկարիչ ու արվեստաբան: 1819—29-ին սովորել է Վարշավայի համալսարանի նկարչական բաժնում, 1829—35-ին՝ ուսումը շարունակել Փարիզում, Միլանում, Ֆլորենցիայում, Հռոմում: Վերադառնալով հայրենիք զբաղվել է նկարչությամբ, արվեստաբանությամբ, մանկավարժությամբ, ստեղծել մատենանիշեր: Մ. հիմնականում դիմանկարիչ էր: Նրա գործերը պահպանվում են Վրոցլավի Օսոլինսկիների գրադարանում և Վարշավայի ազգային թանգարանում: Հեղինակ է բազմաթիվ արվեստագիտական հոդվածների և բանաստեղծությունների:

*Գրկ.* Книга и графика, М., 1972, с. 275—277.

**ՄԻՆԱՍՈՎԻՉ** (Minasowicz) Յուզեֆ Դիոնիսիս (3.10.1792, Վարշավա—8.26.1849, Վարշավա), լեհական բանաստեղծ, թարգմանիչ, պետական-հասարակական գործիչ: Ծնվել է լեհահայ ազնվականի ընտանիքում: Ավարտել է Լայպցիգի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը (1814): 1817-ին եղել է Լեհական թագավորության դատախազության գլխավոր թարգմանիչը, 1819-ին նշանակվել է դատախազի տեղակալ, 1820—21-ին խմբագրել է Վարշավայի «Երաժշտական շաբաթաթերթը»: Եղել է Վարշավայի համալսարանի պրոֆեսոր, 1828-ից՝ Լեհական թագավորության ֆինանսների մինիստր: Ճանաչվել է «Մարդը» (1816) քերթվածով: Գրել է նաև հոգևոր երգերի տեքստեր, որոնք առանձին գրքով լույս են տեսել 1825-ին: 1844-ին հրատարակվել է Մ-ի սեփական և թարգմանական «Երկերի» 4-րդ հատորը: Շիլլերի և Գյոթեի առաջին թարգմանիչներից է լեհ. իրականության մեջ: *Ռ. Համբարձումյան*

**ՄԻՆԱՍՈՎԻՉ** (Minasowicz) Յուզեֆ Էպիֆան (7.4.1718, Վարշավա—15.11.1796, Վարշավա), հայազգի լեհական բանաստեղծ, հրապարակագիր, թարգմանիչ: Սովորել է Վարշավայի Հիսուսյանների դպրոցում, ապա՝ Կրակովի համալսարանում, ստացել իրավագիտության դոկտորի աստիճան: 1769—73 և 1778—81-ին եղել է «Մոնիթոր» («Monitor») հանդեսի խմբագիրը: Հրատարակել է ավելի քան 40 հատոր (լեհերեն, լատ.) պատմագիտական, իմաստասիրական, աստվածաբանական, խրատաբարոյախոսական և այլ թեմաներով աշխատություններ, բանաստեղծությունների ժողովածուներ, թարգմանություններ: Աշխատություններից մի քանիսը պարունակում են տեղեկություններ լեհահայերի մասին: «Լվովի լեհահայոց արքեպիսկոպոսների վարքագրությունը քառյակներով շարադրեալ...» (1762) աշխատությունում կան 1624-ին Հայաստանից Լեհաստան անցած Մելքիսեդեկ կաթողիկոսի կյանքին վերաբերող կարևոր տվյալներ ու փաստեր: Մեկ ուրիշ «Լեհական փոքրիկ քերթվածների ժողովածու» (1782, լեհերեն) գրքում Մ. զետեղել է հայազգի լեհական շատ բանաստեղծների գործեր, նաև իր էպիգրամներն ու քառյակները՝ նվիրված մի շարք նշանավոր լեհահայերի: Ֆրանսերենից, լատիներենից և հունարենից լեհերեն է թարգմանել բազմաթիվ հեղինակների (Բոկաչչո, Պետրարկա, Անակրեոն, Հորացիոս, Հոմերոս) գործեր, որոնցից ուշագրավ է Հայոց Տիգրան Բ թագավորի մասին «Տիգրանես» (1767) կատակերգությունը (իտալերենից): 1769-ին գրել է «Հնդիկ իմաստասերը կամ Մարդկային կյանքի երջանկության հնարները» տրակտատը, հայերին նվիրված աշխատություններ (ձեռագիր), որոնցից մեկը Արևմուտքի երկրներում ապրող հայերի մասին փաստաթղթերի, տեղեկությունների ժողովածու է, մյուսը՝ «Նշանավոր լեհահայերի վարքագրությունը» գիրքը (համարվում է կորած): *Ռ. Համբարձումյան*

**ՄԻՆԱՍՅՈՑ ԳԵՂ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Տրապիզոնի վիլայեթում, համանուն քաղաքից մոտ 8 *կմ* հեռու: 1914-ին ուներ 12 տուն հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ, մասամբ մեղվաբուծությամբ: Գյուղում կար եկեղեցի և դպրոց: Բնակիչները տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է բռնագաղթի ճանապարհին: Սակավաթիվ փրկվածները ապաստան են գտել Աբխազիայում և Կրասնոդարի երկրամասում: *Բ. Թոռլաքյան*

**ՄԻՆԱՐԵ**, մինարեթ (< արաբ. մանարա, բառացի՝ փարոս), մզկիթներին

կից կամ շինության հետ ամբողջություն կազմող աշտարակ, որտեղից մոլլաները մահմեդականներին աղոթքի են հրավիրում: Եգիպտոսի, Իրաքի, Իրանի, Կենտրոնական և Միջին Ասիայի երկրներին բնորոշ են բարձր, դեպի վեր նեղացող, կլոր կամ բազմանկյուն հատակագծով Մ-ները՝ զարդարված աղյուսի ձևավոր շարվածքով, փորագրություններով, ջնարակած խեցեղենով, ցանցկեն պատշգամբների հարկերով: Հատակագծում քառակուսի Մ-ները բնորոշ են Սիրիայի և Հյուսիսային Աֆրիկայի երկրներին: Թուրք. Մ-ները առանձնանում են բազմանկյուն, բարակ բնով ու սայրաձև ավարտով:

**ՄԻՆԳԵՉԱՈՒՐ**, քաղաք Ադրբեջանական ՍՍՀ-ում: Գտնվում է Կուրի ափերին: 63 հզ. բն. (1980): Կան ճանապարհաշինական մեքենաների, մեքենանորոգման, մալուխի, ապակեթելի, ռետինատեխնիկական իրերի, «Էլեկտրոիզոլիտ», երկաթբետոնե իրերի, խոշոր պանելային տնաշինական, փայտամշակման գործարաններ, տեքստիլ և մսի կոմբինատներ, պոլիտեխնիկում, բժշկ. ուսումնարան, պատմահայրենագիտական թանգարան: Հիմնադրվել է 1945-ին, Մինգեչաուրի ՀԷԿ-ի համալիրի կառուցման կապակցությամբ: Քաղաք է 1948-ից:

**ՄԻՆԳԵՉԱՈՒՐԻ ՀԻԴՐՈԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆ**, կառուցվել է Կուր գետի վրա, Մինգեչաուր քաղաքի մոտ (Ադրբ. ՍՍՀ): Շինարարությունն սկսվել է 1945-ին: Շահագործման է հանձնվել 1955-ին: Տեղակայված հզորությունը 359 *Մվտ* է (6 տուրբին): Էլեկտրաէներգիայի տարեկան միջին արտադրանքը՝ 1350 մլն *կվտ·ժ*: Հիդրոհանգույցի մեջ մտնում են հողային ջրաբերուկ ամբարտակը՝ 80 *մ* բարձրությամբ (այս տիպի ամբարտակներից աշխարհում ամենաբարձրը), 1550 *մ* երկարությամբ և 15,6 մլն $մ^3$ ծավալով, մակերևութային և հատակային ջրնետները, ջրընդունիչը, առբերիչ ջրտարները, ամբարտակային տիպի ՀԷԿ-ը, ջրտար ջրանցքը: Ամբարտակը առաջացնում է Մինգեչաուրի ջրամբարը: Էլեկտրաէներգիան հաղորդվում է 330, 220 և 110 *կվ* լարման գծերով: ՀԷԿ-ը մտնում է *Անդրկովկասի միացյալ էներգահամակարգի* մեջ:

**ՄԻՆԳՐԵԼՍԿ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտակերտի շրջանում, շրջկենտրոնից 11 *կմ* հյուսիս-արևմուտք: Միավորված է Մաղավուզի սովետական տնտեսության հետ: Մ-ում է ծնվել Սովետական Միության հերոս Գ. Հայրապետյանը:

**ՄԻՆԴԱՆԱՈ** (Mindanao), կղզի Ֆիլիպինյան արշիպելագում: Տարածությունը 94,6 հզ.$կմ^2$ է, բն՝. 7,5 մլն (1978): Ափագիծը կտրտված է: Ռելիեֆում հերթագայվում են հրաբխային զանգվածներն ու դաշտավայրերը: Կան գործող հրաբուխներ (Ապո լեռ, 2954 *մ*, Ֆիլիպինների ամենաբարձր կետը): Հաճախակի են երկրաշարժերը: Կան քարածխի, երկաթի և գունավոր մետաղների հանքավայրեր: Կլիման մերձհասարակածային է, մուսսոնային, հվ-ում՝ հասարակածային: Խոշոր գետերն են Մինդանաոն և Ագուսան: Տարածված են արևադարձային և մուսսոնային անտառները: Մշակում են բրինձ, մանիլյան կանեփաթել, արքայախնձոր, կոկոսյան արմավենի: Մ-ում են Դավաո, Զամբոանգա քաղաքները:

**ՄԻՆԴԵԼԻ ՍԱՌՑԱՊԱՏՈՒՄ**, մ ի ն դ ե լ [Դանուբի վտակ Մինդել (Mindel) գետի անվամբ], Ալպերի ամենախոշոր սառցապատումներից մեկը: Սահմանել են գերմանացի գիտնականներ Ա. *Պենկը* և է. Բրիկները: Տես նաև *Անթրոպոգենի ժամանակաշրջան*:

**ՄԻՆԴՈՎԳ**, Մ ի ն դ ա ու գ ա ս (ծն. թ. անհտ.—1263), լիտվական մեծ իշխան (1230-ական թթ. վերջ—1263): Միավորել է լիտվ. մի շարք հողեր, իրեն ենթարկել ռուս. քաղաքներ Նովգորոդոկը, Սլոնիմը, Վոլկովիսկը, արշավել է *Լիվոնյան օրդենի* դեմ և պարտվել: 1250-ին փոխզիջման է գնացել օրդենի հետ, ընդունել կաթոլիկություն (1251) և թագադրվել պապի անունից: Բայց, պատրաստվելով նոր մարտերի օրդենի դեմ, մոտ 1253-ին պայմանագիր է կնքել Գալիցիայի իշխան Դանիիլի հետ, վերականգնել և ամրապնդել կապերը Վլադիմիր-Սուզդալյան մեծ իշխան Ալեքսանդր Նևսկու հետ: 1260-ին լիտվ. զորքերը Մ-ի առաջնորդությամբ Դուրբե լճի մոտ պարտության են մատնել Լիվոնյան և Տևտոնյան օրդենների զորքերին ու նրանց դաշնակիցներին: Մ. հրաժարվել է կաթոլիկությունից: Սպանվել է դավադիր ֆեոդալների ձեռքով:

**ՄԻՆԵՐԱԳՐԱՖԻԱ** (< ուշ լատ. minera — հանքանյութ և ...*գրաֆիա*), *միներալոգիայի* բաժին, ուսումնասիրում է հանքանյութերի և հանքային միներալների բաղադրությունն ու կառուցվածքը մի շարք յուրահատուկ մեթոդների (ինչպես սուբյեկտիվ, այնպես էլ օբյեկտիվ) օգնությամբ: Դրանք են՝ անդրադարձվող լույսի օգտագործման վրա հիմնված (անդրադարձման ունակության և պտտման հատկությունների հետազոտման), ֆիզիկական (միկրոկարծրության, մագնիսականության որոշման), քիմ. (միկրոքիմ. փորձարկումների, ստրուկտուրային կերազծման, դրոշմային) մեթոդները: Տերմինն առաջարկել է Ուայթհեդը (Whitehiad)՝ 1917-ին:

**ՄԻՆԵՐԱԼ** (ֆրանս. minéral, < ուշ լատ. minera — հանքանյութ), քիմիապես և ստրուկտուրայով անհատականացված բնական մարմին, որն իր քիմիական կազմությամբ և ֆիզիկական հատկություններով մոտավորապես համասեռ է. արդյունք է երկրակեղևում անընդհատ կատարվող բարդ ֆիզիկաքիմիական պրոցեսների: Մ-ներ են երկրակեղևը կազմող ապարների, հանքանյութերի և բազմաթիվ այլ միներալային մարմինների բաղկացուցիչ մասերը: Մ-ներն առավելապես կարծր բյուրեղային մարմիններ են՝ կազմված մոլեկուլներից. նրանց քիմ. և ֆիզիկական հատկությունները պայմանավորված են քիմ. կազմությամբ և բյուրեղային ցանցի կառուցվածքով: Մ-ների շարքում հանդիպում են տարասեռ սիստեմներ (կարծր կոլոիդներ), փոփոխական կազմության մարմիններ (կարծր լուծույթներ, իզոմորֆ խառնուրդներ), ինչպես նաև հեղուկ մարմիններ (օրինակ, բնածին ծծումբը): Առանձին միներալային տարատեսակներ են համարվում այն մարմինները, որոնք ունեն տարբեր քիմ. կազմություն, ինչպես նաև նույն քիմ. կազմության բազմաձև տարբերակներ (օրինակ, ալմաստ և գրաֆիտ): Այսպիսով, միներալային տեսակների միջև գոյություն ունեցող սահմանները որոշվում են Մ-ների հիմնական հատկությունների (կազմության, ստրուկտուրայի ֆիզիկական հատկանիշների) խիստ փոփոխություններով: Ընդհակառակը, Մ-ների շատ իզոմորֆ շարքեր, որոնցում կազմությունն ու հատկանիշները փոփոխվում են աստիճանաբար, պատկանում են միևնույն միներալային տեսակին (օրինակ, վոլֆրամիտի, կոլումբիտի շարքը ևն): Միներալային տարբերակների շարքին են պատկանում այն Մ-ները, որոնց քիմ. կազմության հարաբերությունները չեն հանգեցնում ստրուկտուրայի կամ ֆիզիկական հատկությունների խիստ տարբերության: Սովորաբար քիմիզմի փոփոխության հետ դիտվում է գույնի, ձևի, փայլի, օպտիկական հատկանիշների աստիճանական փոփոխություն (օրինակ, լեռնային բյուրեղապակի, ամեթիստ, խալցեդոն, ազատ և քվարցի ուրիշ տարբերակներ): Բնության մեջ հայտնի են մոտ 2000 միներալային ձև: Ամենատարածվածներն են սիլիկատների կարգի Մ-ները (միներալների հայտնի քանակի մոտ 34%), օքսիդները և հիդրօքսիդները (մոտ 25%), սուլֆիդային միացությունները և նրանց նմանակները կազմում են մոտ 20 % : Բնության մեջ քիմ. միացությունների մնացած տիպերին բաժին է ընկնում 21%:

Յուրաքանչյուր բյուրեղային Մ. ունի մոտավոր միատարր քիմ. կազմություն, որը կարող է արտահայտվել օքսիդների կամ ստրուկտուրային ֆորմուլի ձևով և արտացոլել բյուրեղային ստրուկտուրան, ինչպես նաև այն կազմող ատոմների միջև գոյություն ունեցող կապի տեսակը (մետաղական, ատոմային, իոնային): Այդ կապը որոշվում է ռենտգենակառուցվածքային վերլուծության և հետազոտությունների այլ մեթոդների օգնությամբ: Բնական Մ-ների շարքում հանդիպում են ինչպես ազատ ատոմներից բաղկացած բյուրեղային գոյացումներ, բնածին մետաղներ (օրինակ, բնածին պղինձ, արծաթ, ոսկի ևն), այնպես էլ տարբեր տիպերի քիմ. միացություններ՝ պարզ և բարդ օքսիդներ (օրինակ, $Cu_2O$, կուպրիտ), աղեր (օրինակ, NaCl), սուլֆիդներ (օրինակ, $Cu_2S$) ևն: Մ-ների մեջ շատ կարևոր դեր է կատարում ջուրը: Մ-ների ֆիզիկական հատկությունների (գույնը, փայլը, կարծրությունը, խտությունը), քիմ. կազմության և ստրուկտուրայի միջև գոյություն ունի սերտ կապ: Մ-ների օպտիկական հատկանիշներից առաջնային նշանակություն ունեն թափանցիկությունը, փայլը և գույնը, իսկ ֆիզիկական հատկություններից՝ հերձումը, կարծրությունը, խտությունը, մագնիսականությունը, էլեկտրահաղորդականությունը, ռադիոակտիվությունը, լուծելիությունը, համը, հոտը:

Մ-ների բյուրեղների արտաքին տեսքը, անջատման ձևը, նրանց ագրեգատների բնույթը, հերձումը կարևոր են Մ-ների ներքին ստրուկտուրան, առաջացման պայմանները և այլ հատկանիշներ որոշելու

համար: Բնության մեջ հանդիպում են պրիզմաձև, ասեղնաձև, թերթաձև, սյունաձև, թեփուկավոր, հավասարաչափ և այլ տեսքի Մ-ներ: Միներալային ագրեգատի բնույթը (դրուզներ, ժեոդներ, սեկրեցիաներ ևն), նրա ստրուկտուրան (հատիկային, զաղտնաբյուրեղային, կոլոմորֆ ևն), օրինաչափ սերտաճումները, բյուրեղների աճման և լուծման, կարծր լուծույթների տրոհման ձևերը հաճախ հնարավորություն են ընձեռում վերականգնելու Մ-ների առաջացման պատմությունն ու պայմանները տվյալ հանքավայրում:

Մ-ներն ունեն բազմազան ծագում: Լինելով բնական ֆիզիկաքիմիական ռեակցիաների արդյունք՝ ամեն մի Մ. կայուն կերպով կարող է գոյություն ունենալ միմիայն որոշակի ջերմաստիճանի, ճնշման և միջավայրի պայմաններում: Բազմաթիվ միներալային տեսակների և երկրակեղևում նրանց զտնվելու ձևերի ուսումնասիրությունների և փորձարարական տվյալների հիման վրա ստեղծվել է Մ-ների առաջացման պրոցեսների պայմանական սխեմա: Ըստ այդ սխեմայի, միներալագոյացման բոլոր պրոցեսները բաժանվում են ներծին և արտածին խմբերի: Փոփոխված արտաքին պայմանների դեպքում ներծին (ընդերքի խորքերում ծնված) և արտածին (Երկրի մակերևույթին առաջացած) Մ-ները ենթարկվում են էական փոփոխությունների՝ նոր պայմաններում փոխարինվում են նոր կայուն միացություններով և առաջացնում մետամորֆածին Մ-ներ:

Մ-ների քիմ., ֆիզիկական ու ձևաբանական առանձնահատկությունների և նրանց ծագման միջև գոյություն ունեցող փոխադարձ կապի ուսումնասիրությունը թույլ է տալիս վերականգնելու միներալային հանքավայրերի ծագման պրոցեսների և ձևավորման պատկերը, որը գիտական հիմք է օգտակար հանածոների հանքավայրերի կանխատեսման, որոնման, հետախուզման և գնահատման համար: Մ-ների ժամանակակից դասակարգման հիմքում դրված են քիմ. կազմության և բյուրեղային ստրուկտուրայի փոխադարձ կապի մասին գոյություն ունեցող պատկերացումները:

Մ-ների ընդհանուր դասակարգման սխեման համառոտ կարելի է ներկայացնել հետևյալ կերպ՝ 1. ատոմային ցանցերի տիպ ատոմների մետաղային կապերով, 2. ատոմային ցանցերի տիպ նույնաբևեռային կապերով, 3. իոնային ցանցերի տիպ տարաբևեռային կապերով և ստրուկտուրայում համալիրային անիոնների բացակայությամբ, 4. իոնային ցանցերի տիպ կապերի տարաբևեռային բնույթով և ստրուկտուրայում համալիրային անիոնների խմբերի առկայությամբ: Վերը թվարկած տիպերը ստորաբաժանվում են ավելի մանր միավորների: Մ-ներն օգտագործվում են որպես հանքանյութեր, որոնցից ձուլվում են մի շարք, այդ թվում հազվագյուտ, մետաղներ և կորզվում բազմաթիվ արժեքավոր տարրեր: Շատ միներալներ կիրառվում են որպես հրակայուն, թթվակայուն, խեցեգործական, մեկուսիչ, ներկող նյութեր, զարդաքարեր ևն. օգտագործվում են նաև օպտիկայում, ռադիոտեխնիկայում և բազմաթիվ այլ բնագավառներում:

Պատկերազարդումը տես 345-րդ էջից առաջ՝ ներդիրում:

*Գրկ.* Вернадский В. И., История минералов земной коры, т. 1, в. 1—2, Л., 1923—27; Дир У. А., Хауи Р. А., Зусман Дж., Породообразующие минералы, пер. с англ., т. 1—5, М., 1965—66; Бетехтин А. Г., Курс минералогии, 3 изд., М., 1961.

**ՄԻՆԵՐԱԼԱՅԻՆ ԲԱՄԲԱԿ**, խարամների և ապարների կամ դրանց խառնուրդի հալույթից ստացվող թելքավոր նյութ: Ապակու հալույթից ստանում են ապակեբամբակ: Մ. բ. օգտագործում են շինարարական կոնստրուկցիաների (այդ թվում և խոշորապանելային) ջերմամեկուսացման համար և արդյունաբերությունում: Մ. բ-ից պատրաստում են թաղիք, խսիրներ, սալեր, սեգմենտներ, ինչպես նաև միներալաբամբակային խառնուրդ՝ մածուկային ջերմամեկուսացման համար:

**ՄԻՆԵՐԱԼԻԶԱՏՈՐՆԵՐ**, *մագմայում* և հիդրոթերմալ լուծույթներում լուծված դյուրացնդող ու քիմիապես բավական ակտիվ, հատկապես բարձր ջերմաստիճաններում, նյութեր: Պնևմատոգեն լուծույթները հիմնականում կազմված են Մ-ից: Հավանաբար, Li, Be, W և այլ մի շարք չցնդող միացություններ մագմայի բյուրեղացման դեպքում նույնպես Մ-ի դեր են կատարում: Մ-ի առկայությունը մագմայում նվազեցնում է նրա մածուցիկությունը և բյուրեղացման ջերմաստիճանը, կարող է փոխել մագմայից միներալների անջատման կարգը և նպաստել խոշոր բյուրեղների աճին: Մ-ի ներկայությունը լուծույթներում խիստ մեծացնում է նրանց մետասոմատիկ քիմ. ակտիվությունը և առաջացնում բազմազան միներալային հանքավայրեր, որոնք տարբերվում են շրջապատող ապարների միներալներից: Մ. հաճախ չեն մտնում առաջացող միներալների բաղադրության մեջ, մասամբ էլ լոկ նպաստում են միներալների առաջացմանը՝ կատարելով կատալիզատորների դեր, որտեղից և ծագել է նրանց անվանումը:

**ՄԻՆԵՐԱԼՆԻԵ ՎՈԴԻ**, քաղաք (1920-ից) ՌՍՖՍՀ Ստավրոպոլի երկրամասում, Կումա գետի հովտում: 68 հզ. բն. (1980): Երկաթուղային կայարան է, օդանավակայան (սպասարկում է կովկասյան հանքային ջրեր կուրորտների խմբին): Կան երկաթուղային տրանսպորտի, սննդարդյունաբերության ձեռնարկություններ, շինանյութերի արտադրություն, «Սուվենիր» գործարան, երաժշտական ուսումնարան:

**ՄԻՆԵՐԱԼՈԳԻԱ** (*միներալ* և ... *լոգիա*), գիտություն բնական քիմիական միացությունների՝ միներալների, նրանց կազմության, ներքին կառուցվածքի, հատկությունների, առաջացման և փոփոխությունների մասին: Մ. ուսումնասիրում է *ապարների* և հանքանյութերի բաղադրամասերը, միներալները և տարբեր երկրբ. պայմաններում տեղի ունեցող միներալառաջացման պրոցեսները: Մ-ի հիմնական խնդիրն է միներալների կազմության ու հատկությունների ուսումնասիրությունը, նրա պատակը՝ նրանց գործնական կիրառումը: Մ. որպես երկրբ. գիտությունների ճյուղ սերտորեն կապված է *պետրոգրաֆիայի*, *երկրաքիմիայի*, օգտակար հանածոների մասին ուսմունքի, ինչպես նաև բյուրեղագիտության, բյուրեղաքիմիայի, ֆիզիկական քիմիայի և քիմիայի հետ: Մ. բաժանվում է մի քանի ուղղությունների՝ նկարագրական, ծագումնաբանական, ռեգիոնալ և կիրառական տեխնիկա-տնտեսական: Նկարագրական Մ. զբաղվում է միներալների նկարագրությամբ, սիստեմավորմամբ, նրանց քիմ. կազմության և բյուրեղային ստրուկտուրայի, ֆիզիկական հատկությունների (կարծրություն, խտություն, օպտիկական հատկանիշներ ևն) ուսումնասիրությամբ: Ծագումնաբանական Մ-ի հիմնական խնդիրն է՝ պարզել այն պայմանները, օրենքները և պրոցեսները, որոնք հանգեցրել են երկրակեղևում և նրա մակերևույթին այս կամ այն միներալային տեսակների կամ միներալային համակարգությունների առաջացմանը: Այդ ուսումնասիրությունները հնարավորություն են ընձեռում վերականգնել միներալային տեսակի պատմությունը՝ կապված Երկրի և օրգ. կյանքի զարգացման ընդհանուր պատմության հետ: Ռեգիոնալ Մ. զբաղվում է միներալային տեսակների և նրանց համաստեղությունների՝ որոշակի երկրբ. կառուցվածքներին և մարզերին տարածականորեն հարելու հարցերի ուսումնասիրությամբ: Դա թույլ է տալիս դատելու տարբեր միներալային համաստեղությունների հնարավոր տարածական տեղաբաշխման մասին և նպատակասլաց պլանավորելու օգտակար հանածոների որոնումն այս կամ այն տարածքում: Ռեգիոնալ-միներալոգիական աշխատանքներն օգնում են կազմելու օգտակար հանածոների, մետաղածնական և այլ մասնագիտացված քարտեզներ: Կիրառական տեխնիկատնտեսական Մ. ուսումնասիրում է միներալների որպես մետաղային և ոչ մետաղային հանքային հումքի առավել արդյունավետ օգտագործման հարցերը: Միներալները, բացի օգտակար հանածոների մեծարժեք հանքավայրերի որոնման հուսալի նշաններ լինելուց, ըստ իրենց հատկանիշների օգտագործվում են տեխնիկայի ամենատարբեր բնագավառներում: Միներալների ուսումնասիրության հետ կապված խնդիրների լուծման նպատակով Մ. օգտվում է տարբեր մեթոդներից (քիմ. անալիզ, սպեկտրաքիմիական և ռենտգենոլոգիական հետազոտություններ, ռենտգենակառուցվածքային վերլուծություն, էլեկտրոնային մանրադիտակ, արհեստական միներալների սինթեզ ևն):

Մ., ինչպես նաև բնական մյուս գիտությունները, սկզբնավորվել է մարդու գիտակցական կյանքի հետ զուգահեռ: Մարդը քարն օգտագործել է կացարան շինելու, աշխատանքային, որսի և այլ գործիքներ պատրաստելու համար, ստիճանաբար հայտնաբերել է թանկարժեք քարեր և այլ քարանյութեր, հանքանյութեր ևն: Միներալների մասին առաջին տվյալները բերվել են անտիկ աշխարհի՝ Հու-

նաստանի և Հռոմի գիտնականների աշխատություններում մեր թվարկությունից մի քանի դար առաջ (Արիստոտել՝ 384—322, Թեոֆրաստ՝ 372—287)։ Նրանք միներալային մարմինները բաժանել են երկու դասի՝ քարեր և հանքանյութեր, իսկ Ավիցեննան (մոտ 980—1037)՝ քարերի, այրվող մարմինների, աղերի և մետաղների։ Մարդը միներալային հումքը օգտագործել է տակավին շատ վաղ ժամանակներից։ Այդ մասին են վկայում բազմաթիվ պեղումների արդյունքները, հնագույն հանքափորվածքները, պղնձի ու երկաթի ձուլարանները, ոսկու հանքերը ևն։ Մարդկային մշակույթի հետքեր շատ կան Հայաստանի տարածքում՝ Մեծամորի հնագույն մետաղաձուլարանը, Զոդի ոսկու հանքերը, երկաթի և պղնձի հալոցները տարբեր շրջաններում, որոնք հազարավոր տարիների պատմություն ունեն։

Մ-ի զարգացումը և նրա առաջընթացը սերտորեն շաղկապվում են մարդկային հասարակության զարգացման պատմության հետ։ Այն բուռն վերելք է ապրում ֆեոդալիզմի ժամանակաշրջանում, էլ ավելի մեծ թափ ստանում XIX դ. վերջին, իմպերիալիզմի դարաշրջանում։ Տեխնիկայի զարգացումը և նոր քիմ. տարրերի ու նրանց կիրառման բնագավառների հայտնագործումը պահանջեցին մշակել միներալների ու հանքանյութերի ուսումնասիրման որակապես նոր մեթոդներ։ XX դ. Մ-ում տեղի է ունենում երկու ուղղությունների՝ բյուրեղաքիմիայի և ծագումնաբանության միավորում։ Մ-ում ծագումնաբանական ուղղությունը ստեղծել է Վ. Ի. *Վերնադսկին*, հետագայում այն զարգացրել են նրա աշակերտները՝ Ա. Ե. *Ֆերսմանը* և այլք։ Ռուսաստանում Մ. բուռն զարգացում ստացավ հատկապես Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո։ Ստեղծվեցին բազմաթիվ գիտահետազոտական ինստ-ներ, բուհեր, որոնք սիստեմատիկ ուսումնասիրություններ են կատարում Մ-ի գծով։ Ստեղծվել է Մ-ի նոր ուղղություն՝ տիեզերական մարմինների Մ., որի զարգացումը հնարավոր է դարձել միայն լուսնային ապարների նմուշների ստացման ժամանակից։ Այդ նմուշների հետազոտությունները թույլ տվեցին առաջին եզրակացություններն անել Լուսնի վրա միներալառաջացման առանձնահատկությունների մասին։ ՀՍՍՀ-ում միներալոգիական հետազոտություններ են տարվում ԳԱ երկրաբանական գիտությունների ինստ-ում, Երևանի համալսարանում, հանրապետության Մինիստրների խորհրդի երկրաբանական վարչությունում։

*Գրկ.* Ломоносов М. В., О слоях земных и другие работы по геологии, М.—Л., 1949; Вернадский В. И., Избр. соч., т. 2—3—Опыт описательной минералогии, М., 1955—59; Бетехтин А. Г., Курс минералогии, 3 изд., М., 1961; Лазаренко Е. К., Курс минералогии, М., 1971.

**ՄԻՆԵՐՎԱ** (Minerva), հին հռոմեական աստվածուհի։ *Յուպիտերի* և *Յունոնայի* հետ կազմել է *Կապիտոլիումի* սրբազան երրորդությունը։ Համարվել է արհեստավորների և արվեստի ներկայացուցիչների խնամակալուհին։ Մ. թ. ա. III դ. վերջից նույնացվել է հին հուն. Աթենասին և պաշտվել նաև իբրև պատերազմի ու պետ. իմաստության դիցուհի։ Մ-ի պատվին սահմանված 5-օրյա տոները նշվել են մարտ և հունիս ամիսներին։

**ՄԻՆՅԵ** (Mignet) Ֆրանսուա Օգյուստ Մարի (1796—1884), ֆրանսիացի պատմաբան, Ֆրանսիական ակադեմիայի անդամ (1836)։ Կրթությամբ իրավաբան։ Կողմնակից էր բուրժ. սահմանադրական միապետության։ Մասնակցել է 1830-ի Հուլիսյան հեղափոխությանը։ Օ. *Թիերիի*, Ֆ. *Գիզոյի* և Ա. Թիերիի հետ հիմնել է բուրժ. պատմագրության մեջ նոր ուղղություն, որը դասակարգային պայքարը դիտել է որպես պատմական իրադարձությունների գլխավոր շարժիչ ուժ։ Գրել է «Ֆրանսիական հեղափոխության պատմությունը» (1824), որտեղ Ֆրանս. մեծ հեղափոխությունը համարել է անխուսափելիություն, քանի որ ֆեոդալական կարգը դադարել էր համապատասխանել զարգացող բուրժուազիայի պահանջներին, իսկ *յակոբինյան դիկտատուրան*՝ հեղափոխության կարևոր փուլ։ Դասակարգային պայքարն ընդունել է այնքան ժամանակ, քանի դեռ այն մղել է բուրժուազիան ֆեոդալների դեմ, սակայն խստորեն քննադատել է պրոլետարիատի պայքարը ընդդեմ բուրժուազիայի։

*Երկ.* Histoire de la Révolution française..., v. 1—2, P., 1824.

*Գրկ.* Petit E., Fr. Mignet, P., 1889.

**ՄԻՆԻՄԵՏՐ** (< լատ. minimus — փոքրագույն և... *մետր*), գծային չափսերի չափման սարք, որում փոխակերպիչ մեխանիզմ է ծառայում դանակավոր հենարանների վրա տեղադրված տարրերով անհավասարաչափ բազուկ լծակը։ Չափման սահմանը 20-ից մինչև 600 *մկմ* է, սխալանքը՝ 0,5—2,5 *մկմ*։

**ՄԻՆԻՄՈՒՄ ԵՎ ՄԱՔՍԻՄՈՒՄ** (< լատ. minimum — նվազագույն և maximum — առավելագույն), որևէ կետում f(x) ֆունկցիայի արժեքը, որն ամենափոքրն է (ամենամեծն է) այդ կետին բավականաչափ մոտ կետերում f(x) ֆունկցիայի արժեքներից։ Ավելի խիստ. $x_0$ կետն անվանում են f(x) ֆունկցիայի մինիմումի (մաքսիմումի) կետ, եթե գոյություն ունի $x_o$-ի մի $(x_o-\delta, x_o+\delta)$ շրջակայք, որ այդ շրջակայքի բոլոր x-երի համար տեղի ունի $f(x_o)\leqslant f(x) (f(x_o)\geqslant f(x))$ անհավասարությունը։ Մինիմումի և մաքսիմումի կետերը անվանում են էքստրեմումի կետեր (< լատ. extremum — ծայրագույն), իսկ այդ կետերում ֆունկցիայի արժեքը՝ ֆունկցիայի էքստրեմում (մաքսիմում կամ մինիմում) արժեք։ Ֆունկցիայի էքստրեմումը չպետք է շփոթել ֆունկցիայի մեծագույն (կամ փոքրագույն) արժեքների հետ. մաքսիմումի (մինիմումի) կետերում ֆունկցիայի արժեքը ամենամեծն (ամենափոքրն) է ոչ թե ֆունկցիայի բոլոր, այլ մի ինչ-որ շրջակայքում ունեցած արժեքներից։ Նկարում $x_1$ կետը մինիմումի կետ է, իսկ $x_5$-ը՝ մաքսիմումի, բայց $f(x_5)$-ը փոքր է $f(x_1)$-ից. այսինքն՝ մինիմումի կետում ֆունկցիայի արժեքը կարող է մեծ լինել մաքսիմումի կետում ֆունկցիայի արժեքից։ Եթե $x_o$-ն էքստրեմումի կետ է, ապա կամ այդ կետում f(x)-ի ածանցյալը գոյություն չունի, կամ՝ $f'(x_o)=0$ (նկարում՝ $x_6$ մինիմումի կետում գոյություն չունի $f'(x_6)$-ը, իսկ $x_1$, $x_2$, $x_4$ էքստրեմումի կետերում՝ $f'(x_1)=0$, $f'(x_2)=0$, $f'(x_4)=0$. բայց $f'(x_o)=0$ պայմանը բավարար չէ էքստրեմում լինելու համար ($x_3$ կետում f(x)-ի ածանցյալը 0 է՝ $f'(x_3)=0$, բայց $x_3$-ը էքստրեմումի կետ չէ)։ Եթե $x_o$ կետի ձախակողմյան շրջակայքում f′(x)-ը դրական է (բացասական է), իսկ աջակողմյան շրջակայքում f′(x)-ը բացասական է (դրական), ապա $x_o$-ն մաքսիմումի (մինիմումի) կետ է. իսկ եթե $x_o$ կետով անցնելիս f (x)-ը նշանը չի փոխում, ապա




$x_o$-ն էքստրեմումի կետ չէ (օրինակ, $x_3$ կետը)։ Հանգունորեն սահմանվում է շատ փոփոխականի ֆունկցիայի էքստրեմումը։

**ՄԻՆԻՆ** (Մ ու խ ո ր ու կ) Կուզմա (ծն. թ. անհտ.—մհ. 1616), Ռուսաստանում XVII դարի սկզբին լեհ-շվեդական ինտերվենցիայի շրջանում երկրորդ ժողովրդական աշխարհազորի կազմակերպիչներից և ղեկավարներից։ Ծագումով Նիժնի Նովգորոդի առևտրա-արհեստավորական դասից, մսագործ։ 1611-ին ընտրվել է զեմստվային ավագ և գլխավորել ժող. աշխարհազորի համար միջոցների հանգանակումը։ Մ-ի խորհրդով ռազմ. ղեկավարությունը ստանձնել է իշխան Դ. *Պոժարսկին*։ 1612-ի օգոստ. 22—24-ին Մոսկվայի համար մղված մարտերում ցուցաբերել է մեծ ակտիվություն և անձնական քաջություն։ 1613-ին մտել է Բոյարական դումայի կազմի մեջ, ստացել դումայական ազնվականի կոչում։ Մ. առավել հանրաճանաչ ռուս. ազգային հերոսներից է։ Մոսկվայում, Կարմիր հրապարակում կանգնեցված է Մ-ի և Պոժարսկու հուշարձանը (1818, քանդակագործ՝ Ի. Մարտոս)։

**ՄԻՆԻՍՏՐ** (ֆրանս. ministére, < լատ. ministerium—ծառայություն, պաշտոն), *մինիստրություն* գլխավորող բարձրագույն պաշտոնատար անձ, որը որպես կանոն մտնում է կառավարության կազմի մեջ։

**ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴ**, պետական իշխանության բարձրագույն գործադիր կարգադրիչ մարմին, *կառավարություն*։ ՍՍՀՄ-ում կազմավորվել է 1946-ին՝ *Ժողովրդական կոմիսարների խորհրդի* փոխարեն։ ՍՍՀՄ Մ. խ. կազմում է ՍՍՀՄ Գերագույն սովետը՝ հերթական գումարման առաջին նստաշրջանում, հետևյալ կազմով՝ ՍՍՀՄ Մ. խ-ի նախագահ, նախագահի առաջին տեղակալներ և տեղակալներ, ՍՍՀՄ մինիստրներ, ՍՍՀՄ պետ. կոմիտեների նախագահներ։ ՍՍՀՄ Մ. խ-ի կազմի մեջ ի պաշտոնե մտնում են նաև միութենական հանրապետությունների Մ. խ-ների նախագահները։ ՍՍՀՄ Մ. խ. ընդհանուր իրավասության մարմին է, որը լուծում է ՍՍՀ Միության տնօրինու-

թյանը վերապահված բոլոր հարցերը, բացառությամբ ՍՍՀՄ Գերագույն սովետի ու նրա Նախագահության վերապահված հարցերի: ՍՍՀՄ Մ. խ. ապահովում է ժող. տնտեսության և սոցիալ-կուլտուրական շինարարության ղեկավարումը. մշակում և իրականացնում է միջոցառումներ ժողովրդի բարեկեցության և կուլտուրայի աճն ապահովելու, գիտությունն ու տեխնիկան զարգացնելու, բնական ռեսուրսները ռացիոնալ օգտագործելու և պահպանելու, դրամական և վարկային համակարգն ամրապնդելու, գների, աշխատանքի վարձատրության, սոցիալական ապահովության միասնական քաղաքականություն վարելու, պետ. ապահովագրություն և հաշվառման ու վիճակագրության միասնական համակարգ կազմակերպելու ասպարեզում, կազմակերպում է արդ., շինարարական, գյուղատնտ. ձեռնարկությունների ու միավորումների, տրանսպորտի և կապի ձեռնարկությունների, բանկերի, ինչպես նաև միութենական ենթակայության այլ կազմակերպությունների ու հիմնարկների կառավարումը: ՍՍՀՄ Մ. խ. միջոցառումներ է իրականացնում պետության շահերը պաշտպանելու, սոցիալիստական սեփականությունն ու հասարակական կարգն ամրապնդելու, քաղաքացիների իրավունքներն ու դեմոկրատական ազատությունները, պետ. անվտանգությունն ապահովելու ուղղությամբ, իրականացնում է զինված ուժերի շինարարության ընդհանուր ղեկավարումը, որոշում է իսկական զինվորական ծառայության համար զորակոչի ենթակա քաղաքացիների ամենամյա կոնտինգենտը, ապահովում է արտասահմանյան երկրների հետ հարաբերությունների ընդհանուր ղեկավարումը ևն: ՍՍՀՄ Մ. խ. ՍՍՀՄ օրենքների, Գերագույն սովետի ու նրա Նախագահության այլ ակտերի հիման վրա, և ի կատարումն դրանց, հրատարակում է ՍՍՀՄ ողջ տերիտորիայում պարտադիր կատարման ենթակա որոշումներ ու կարգադրություններ, ստուգում դրանց կատարումը: Առավել կարևոր համապետական հարցերի վերաբերյալ որոշումներ ընդունում է ՍՄԿԿ Կենտկոմի հետ համատեղ: ՍՍՀՄ Մ. խ. միավորում և ուղղություն է տալիս ընդհանուր միութենական և միութենական-հանրապետական *մինիստրությունների* և *պետական կոմիտեների*, իրեն ենթակա մյուս մարմինների աշխատանքին: ՍՍՀՄ տնօրինությանը վերապահված հարցերում իրավունք ունի կասեցնել միութենական հանրապետությունների Մ. խ-ների որոշումների ու կարգադրությունների կատարումը, չեղյալ հայտարարել ՍՍՀՄ մինիստրությունների, ՍՍՀՄ պետ. կոմիտեների, իրեն ենթակա մյուս մարմինների ակտերը (տես *Սահմանադրություններ սովետական*, հոդվածներ 128—136):

Մ. խ. ունեն նաև միութենական և ինքնավար հանրապետությունները: ՀՍՍՀ Մ. խ. հանրապետության պետ. իշխանության բարձրագույն գործադիր կարգադրիչ մարմինն է: Նրա կառուցվածքն ու իրավասությունները (էությամբ նման ՍՍՀՄ Մ. խ-ի կառուցվածքին ու իրավասություններին) սահմանված են ՀՍՍՀ սահմանադրությամբ (հոդվածներ 116—124) և հանրապետության Մ. խ-ի մասին 1978-ի դեկտ. 15-ի օրենքով:

ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարների խորհրդի (1946-ից՝ Մ. խ-ի) նախագահներ են եղել Ա. Մյասնիկյանը (1921—22), Ս. Լուկաշինը (1922—25), Ս. Համբարձումյանը (1925—28), Ս. Տեր-Գաբրիելյանը (1928—1935), Ա. Գուլոյանը (1935—37), Մ. Դանիելյանը (1937—38), Ա. Փիրուզյանը (1938—43), Ա. Սարգսյանը (1943—1947), Ս. Կարապետյանը (1947—52), Ա. Քոչինյանը (1952—66), Բ. Մուրադյանը (1966—72), Գ. Արզումանյանը (1972—1976): Ֆ. Սարգսյանը ՀՍՍՀ Մ. խ-ի նախագահն է 1977-ից: *Ա. Լալայան*

**ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԿԱԲԻՆԵՏ**, տես *Կառավարություն*:

**ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅՈՒՆ**, պետական կառավարման կենտրոնական մարմին, որն իրականացնում է կառավարման որոշակի ճյուղի ղեկավարությունը: Մ-ները ըստեղծվել են Արևմտյան Եվրոպայում՝ XVI—XVII դդ., Ռուսաստանում՝ Ալեքսանդր I-ի օրոք: ՍՍՀՄ-ում Մ. (մինչև 1946-ը՝ *Ժողովրդական կոմիսարիատ*) ապահովում է գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա արտադրության համակողմանի զարգացումը, աշխատանքի արտադրողականության աճի բարձր տեմպերը, պետ. պլանային առաջադրանքների կատարումը և կարգապահության պահպանումը, բարձրորակ արտադրանքի թողարկումը, հիմնական ֆոնդերի, աշխատանքային, ֆինանսական միջոցների օգտագործման բարելավումը, միասնական տեխ. քաղաքականության իրականացումը, գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների, առաջավոր փորձի արմատավորումը ևն: ՍՍՀ Միության Մ., հաշվի առնելով ՍՍՀՄ, միութենական հանրապետությունների և երկրի տնտ. շրջանների ժողտնտեսության կոմպլեքսային զարգացման պահանջները, գիտական հիմունքներով ապահովում է ճյուղի պլանային ղեկավարումը: Մ-ների իրավական վիճակը որոշվում է ՍՍՀՄ, միութենական և ինքնավար հանրապետությունների մինիստրների խորհուրդների մասին օրենքներով, 1967-ի հուլիսի 10-ին հաստատված ՍՍՀՄ մինիստրությունների մասին ընդհանուր կանոնադրությամբ, առանձին Մ-ների կանոնադրություններով և այլ ակտերով: Ըստ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի մասին օրենքի, Մ. կազմում է Գերագույն սովետը: ՍՍՀՄ *Մինիստրների խորհուրդը* միավորում և ուղղություն է տալիս ընդհանուր միութենական և միութենական-հանրապետական Մ-ների աշխատանքին (ՍՍՀՄ սահմանադրություն, հոդված 135): ՍՍՀՄ-ում Մ-ները լինում են ընդհանուր-միութենական, միութենական-հանրապետական և հանրապետական: Ընդհանուր-միութենական Մ-ները ՍՍՀՄ-ի ամբողջ տերիտորիայում իրենց հանձնարարված կառավարման ճյուղերը ղեկավարում են անմիջականորեն իրենք կամ իրենց մարմինների միջոցով: Միութենական-հանրապետական Մ-ները, որպես կանոն, իրենց հանձնարարված կառավարման ճյուղերը ղեկավարում են միութենական հանրապետությունների համապատասխան մինիստրությունների և այլ մարմինների միջոցով, իսկ միութենական ենթակայության առանձին ձեռնարկություններն ու միավորումները՝ անմիջականորեն: Հանրապետական Մ-ները իրենց հանձնարարված ճյուղերը ղեկավարում կամ միջճյուղային կառավարումն իրականացնում են՝ ենթարկվելով միութենական հանրապետության Մինիստրների խորհրդին: Մ-ները ղեկավարում են մինիստրները, որոնք կառավարության անդամ են:

Սոցիալիստական երկրներում Մ-ները, որպես կանոն, կազմում են պետ. իշխանության բարձրագույն մարմինները, միանձնյա պրեզիդենտ ունեցող երկրներում՝ պրեզիդենտները, իշխանության բարձրագույն մարմնի հաստատմամբ: Չեխոսլովակիայում գործում է պետ. քարտուղարի հաստիք, որը փաստորեն ֆեդերալ Մ-յան համաղեկավարն է: Հարավսլավիայում Մ-ները վերացվել են, նրանց փոխարինում են ֆեդերալ պետ. և միութենական քարտուղարությունները:

Բուրժ. երկրներում Մ-ները իրագործում են գործադիր ֆունկցիաներ և ղեկավարում կառավարման առանձին ճյուղեր: Որոշ երկրներում կառավարության օրենքների կամ ակտերի հիման վրա Մ-ները կազմվում են օրենսդրական բարձրագույն մարմինների (օրինակ, Ֆրանսիայում) կամ պետության գլխի ակտով (օրինակ, Մեծ Բրիտանիայում): Մ-ների անձնակազմն ունի բնորոշ առանձնահատկություն. մի մասը անփոփոխ պրոֆեսիոնալ աստիճանավորներն են, մյուս մասը (որպես կանոն, մինիստրության ղեկավարները՝ մինիստր, պետ. քարտուղար ևն), այսպես կոչված, քաղ. վարչարարները, որոնք փոխվում են կառավարության հետ մեկտեղ: Մինիստրներին նշանակում և ազատում են պետ. իշխանության կամ կառավարության գլուխները (ԱՄՆ-ում և *Ֆրանսիայում՝ պրեզիդենտները, Մեծ* Բրիտանիայում՝ պրեմիեր մինիստրը): Որոշ երկրներում մինիստրը պետք է լինի պառլամենտի անդամ (օրինակ, Մեծ Բրիտանիայում), այլ երկրներում այդ իրավունքը բացառվում է: Մ-ների ներքին կառուցվածքը չափազանց բազմազան է կախված մեծությունից, գործունեության ծավալից և բնույթից: *Ա. Լալայան*

**ՄԻՆԿՈՎՍԿԻ** (Minkowski) Հերման (1864—1909), գերմանացի մաթեմատիկոս և ֆիզիկոս: Բոննի (1893-ից), Քյոնիգսբերգի (1894-ից), Ցյուրիխի (1896-ից), Գյոթինգենի (1902-ից) համալսարանների պրոֆեսոր: Մշակել և զարգացրել է թվերի երկրաչափությունը, որում օգտագործվում են թվերի տեսության բարդ հարցերի լուծման երկրաչափական մեթոդներ: Մ-ու աշխատանքների կարևոր մասն են կազմում բազմանիստների, ուռուցիկ մարմինների, ինչպես նաև մաթ. ֆիզիկայի, հիդրոդինամիկայի տարբեր հարցերին վերաբերող ուսումնասիրությունները:

Մ. հայտնի է որպես հարաբերականության հատուկ տեսության երկրաչափական մեկնաբանության մշակող. մտցրել է քառաչափ կամ եռաչափ ֆիզիկական և ժամանակի միավորումը հանդիսացող տա-

րածություն (Մ ի ն կ ո վ ս կ ու տ ա ր ա ծ ու թ յ ու ն ը):

**ՄԻՆԿՈՒՍ** (Minkus) Լյուդվիգ Ֆեոդորովիչ [(իսկական անունը՝ Ա լ ո ի զ ի Լ յ ու դ վ ի գ), 23.3.1826, Վիեննա — 7.12.1917, Վիեննա], կոմպոզիտոր և ջութակահար: Ազգությամբ չեխ: 1850-ական թթ. սկզբից ապրել է Ռուսաստանում: 1862-ից մոսկովյան թատրոնների երաժշտության տեսուչ, 1866—72-ին Մոսկվայի կոնսերվատորիայի պրոֆեսոր, 1872-ից Պետերբուրգի կայսերական թատրոնի բալետային երաժշտության կոմպոզիտոր: 1890-ից ապրել է Վիեննայում: Հեղինակ է բազմաթիվ բալետների, դրանց թվում՝ «Ֆիամետտա կամ Սիրո հաղթանակ» (բեմ. 1864), «Դոն Կիխոտ» (բեմ. 1869), «Բայադերկա» (բեմ. 1877), ջութակի երկերի (12 էտյուդներ):

**ՄԻՆՆԵԱՊՈԼԻՍ** (Minneapolis), քաղաք ԱՄՆ-ի հյուսիսում, Մինեսոտա նահանգում, Միսսիսիպի գետի ափին: 378 հզ. բն., Սենտ Փոլ քաղաքի և մերձքաղաքային գոտու հետ՝ 1,8 մլն (1975): Միննեսոտա նահանգի արդ. խոշոր կենտրոնն է: Զարգացած է մսի, ալրաղաց, քիմ. և պոլիգրաֆ արդյունաբերությունը, անտառահատումն ու փայտամշակությունը: Մեքենաշինության և մետաղամշակման առաջատար ճյուղերն են ռադիոէլեկտրոնային արդյունաբերությունը, էլեկտրական և արդ. տարբեր սարքավորումների, գյուղատնտ. մեքենաների արտադրությունը: Մ-ում կա համալսարան:

**ՄԻՆՆԵԶԻՆԳԵՐ** (գերմ. Minnesinger, Minne — սեր և Singer — երգիչ), գերմանական ասպետական բանաստեղծ-երգիչ: Մ-ների պոեզիան կազմավորվել է XII—XIII դդ. 2-րդ կեսից՝ պրովանսյան տրուբադուրների քնարերգության ազդեցությամբ: Մ-ների թեման ասպետական սերն էր, աստծուն ու սյուզերենին ծառայելը, ասպետների ռազմ. կյանքն ու խաչակրաց արշավանքները իդեալականացնելը: Մ-ների երգերը կատարվել են լարային գործիքների նվագակցությամբ: Այդ դարաշրջանի խոշորագույն քնարերգուն է Վալտեր ֆոն դեր Ֆոգելվայդեն: Ասպետական մշակույթի ճգնաժամով և այսպես կոչված գյուղական միննեզանգի երևան գալով՝ Մ-ների պոեզիան անկում ապրեց և XIV դ. փոխարինվեց բյուրգերական մայստերզանգով (տես *Մայստերզինգեր*):

**ՄԻՆՆԵՍՈՏԱ** (Minnesota), նահանգ ԱՄՆ-ի հյուսիսում, Մեծ լճերից արևմուտք: Տարածությունը 218 հզ. *կմ*² է, բնակչությունը՝ 3,8 մլն (1970, 66,4%-ը՝ քաղաքային): Վարչական կենտրոնը՝ Սենտ Փոլ: Մակերևույթի մեծ մասը ալիքավոր հարթավայր է: Հս-արլ-ում կան բլուրներ: Կլիման չափավոր ցամաքային է: Հիմնական գետը Միսսիսիպին է: Կան բազմաթիվ լճեր: Տնտեսության գլխավոր ճյուղը արդյունաբերությունն է: Մ-ում արդյունահանվում է ԱՄՆ-ի երկաթի հանքաքարի 2/3-ը: Մշակող արդյունաբերության կարևոր ճյուղերն են ալացային և յուղապանրագործականը: Կա կաշվի արտադրություն: Զարգացած է մեքենաշինությունը, ռազմ. և նավաշինական արդյունաբերությունը, մետալուրգիան: Կարևոր դեր ունի գյուղատնտեսությունը, որի ապրանքային արտադրանքի մոտ 70%-ը տալիս է անասնապահությունը: Մշակում են ցորեն, եգիպտացորեն, տարեկան, շաքարի ճակնդեղ, ընդավորներ, զանգրաբել վուշ: Խոշոր նավահանգիստը Դուլութ-Սյուպիրիորն է: Մ. ԱՄՆ-ում գրավում է I տեղը կարագի, չոր կաթի, վարսակի, հնդկահավի մսի, II տեղը՝ պանրի արտադրությամբ:

**ՄԻՆՈՍ** (Μίνως), Կնոսոսի (Կրետե կղզում) առասպելական թագավոր: Համարվել է Զևսի և Եվրոպայի որդին: Մ-ի անվանն են առնչվում բազմաթիվ առասպելներ (Կրետեի ցլի, Մինոտավրոսի, Մեգարայի նվաճման, աթենացիների դեմ պատերազմի ևն): Մ-ին է վերագրվում Կրետեի առաջին օրենսդրությունը, ծովային հզոր տիրակալության՝ (թալասսոկրատիա) ստեղծումը: Ավանդազրույցներից մեկի համաձայն, երբ Դեդալոս ճարտ-ը Կրետեից փախել է Սիրակուսե, նրան հետապնդող Մ-ին այնտեղ սպանել են Կոկալոս թագավորի դուստրերը: Մահից հետո Մ. դարձել է մեռյալների դատավոր: Մ-ի առասպելաբանությանն է նվիրված Եվրիպիդեսի «Կրետացիներ» ողբերգությունը, որը մեզ չի հասել: Կրետեի հնագիտական պեղումները հիմքեր են տալիս Մ-ի մասին առասպելները համադրելու կղզու մ. թ. ա. XVII—XV դդ. պատմությանը: Արդի պատմագիտության մեջ ընդունված է Կրետեի հնագույն պատմությունը բաժանել մինոսյան երեք փուլերի (Մ-ի անունով):

**ՄԻՆՈՏԱՎՐՈՍ** (հուն. Μινώταυρος), հին հունական դիցաբանական հրեշ: Ըստ առասպելի, Մ. ծնվել է Կնոսոսի *Մինոս* թագավորի կնոջ՝ Պասիփեի և Պոսիդոնի ատծո սրբազան ծովային ցուլի անբնական զուգավորումից: Մարդու մարմնով և ցլի գլխով օժտված Մ. իբր բնակվել է Դեդալոսի կառուցած լաբիրինթոսում, սնվել հանցագործ մահապարտների, ինչպես նաև հարկատու Աթենքից ամեն տարի ուղարկվող յոթական պատանիների ու աղջնակների մարմիններով: Ի վերջո, մարդակեր հրեշին սպանել է *Թեսևս* դյուցազնը: Տոտեմական հավատքի վրա հյուսված այդ առասպելը հիշեցնում է երբեմնի գոյություն ունեցող մարդկային զոհաբերության մասին:

**ՄԻՆՈՏԻՍ** (Μινώτη) Ալեքսիս (ծն. 1900), հույն դերասան և ռեժիսոր: 1925-ից աշխատել է իր ուսուցիչ Մ. Կոտոպուլիի թատերախմբում, 1932-ից հանդես եկել Ազգային թատրոնում (Աթենք): Դերերից են՝ Շայլոկ, Համլետ (Շեքսպիրի «Վենետիկի վաճառականը», «Համլետ»), Բորիս Գոդունով (Ա. Տոլստոյի «Իոհան Ահեղի մահը»), Օսվալդ (Իբսենի «Ուրվականներ»): 1942-ին, ֆաշիստական օկուպացիայի տարիներին մեկնել է ԱՄՆ, վերադարձել 1950-ին: 1955-ից Ազգային թատրոնում բեմադրել է Սոֆոկլեսի «Անտիգոնե», Եվրիպիդեսի «Մեդեա», Շեքսպիրի «Լիր արքա», «Ռիչարդ III», Դյուրենմաթի «Տեր տիկնոջ այցը», Մելասի «Ռիգաս Վալեստինիլիս» և այլ պիեսներ: Հանդես է գալիս նաև որպես օպերային ռեժիսոր:

**ՄԻՆՈՐ** (< լատ. minor — փոքր), տես *Ոըոշիչ*:

**ՄԻՆՈՐ**, *լադ*, որի հիմքում ընկած է փոքր (մինոր) եռահնչյուն: Լադային երանգը հակադիր է *մաժորին*, և այդ հակադրությունը երաժշտության մեջ գեղագիտական կոնտրաստ ստեղծող կարևոր միջոցներից է: Մ. դասական տեսք է ստացել




XVIII դ. (ֆունկցիոնալ հարմոնիայի դարաշրջանում): XIX դ. կեսերից Մ. և մաժոր լադերի փոխներթափանցման հետևանքով գոյացել է մինոր-մաժոր միավորված համակարգը:

**ՄԻՆՈՐՍԿԻ** Վլադիմիր Ֆեոդորովիչ (1877—1966), ռուս արևելագետ: Ավարտել է Մոսկվայի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը (1900) և Լազարյան ճեմարանը (1903): 1904-ից ծառայել է Ռուսաստանի արտգործմինիստրությունում, պաշտոնավարել Իրանի և Թուրքիայի ռուս. դեսպանություններում: Ապրել է Ֆրանսիայում (1919—32), Մեծ Բրիտանիայում (1932-ից): 1937-ից՝ Լոնդոնի համալսարանի պրոֆեսոր: Մ-ու աշխատությունները (մոտ 200) նվիրված են Իրանի, Անդրկովկասի, Թուրքիայի պատմությանը և մշակույթին, իսլամի պատմությանը, աղբյուրագիտությանը, ազգագրությանը, արևելագիտությանը: 1940-ական թթ. Մ. համագործակցել է սովետական արևելագետների հետ, գրախոսել նրանց աշխատությունները (այդ թվում՝ Հ. Ա. Օրբելու և Ն. Յա. Մառի «1916 թ. հնագիտական արշավախումբ դեպի Վան» աշխատությունը): Գրել է հուշեր Կոմիտասի մասին:

*Գրկ.* Кузнецова Н. А., Владимир Фёдорович Минорский (Памяти ученого), «Народы Азии и Африки», 1966, № 6.

*Վ. Բայբուրդյան*

**ՄԻՆՋՔԵՄԲՐԻ**, երկրակեղևի հնագույն հաստվածքները և նրանց առաջացմանը համապատասխանող ժամանակաշրջանը, որը կազմում է Երկրի երկրաբանական պատմության մոտ 6/7 մասը: Մ-ի երկրբ. պատմությունը երկար ժամանակ մնում էր անիմանալի, չնայած այդ հասակի ապարներում վաղուց հայտնաբերվել էին կյանքի տարբեր հետքեր: Միայն XX դ. 30-ական թվականներին Մ-ի շերտագրության և ժամանակագրության ուսումնասիրության մեջ սկսեցին օգտագործել ռադիոմետրիկ մեթոդներ, ինչպես նաև փորձեր արվեցին համադրել Մ-ի նստվածքային հաստվածքները ըստ ստրոմատոլիտների (հին ջրիմուռների): Մ-ի տևողությունը, արդի տվյալներով, որոշվում է մեզ հայտնի ամենահնագույն (մոտ 3500 մլն տարի հասակ ունեցող) երկրբ. գոյացումների առաջացման ժամանակից մինչև *քեմբրի ժամանակաշրջանի* սկիզբը (մոտ 570 մլն տարի առաջ), այսինքն՝ կազմում է ավելի քան 2900 մլն տարի: XIX դ. երկրորդ կեսում ընդհանուր պատմաերկրաբանական տվյալների, ապարների մետամորֆիզմի աստիճանի և այլ հատկանիշների հիման վրա Հյուսիսային Ամերիկայում առաջարկվեց Մ-ի ստորաբաժանումը ա ր խ ե յ ի կամ ա ր խ ե ո զ ո յ ի (ան-

ջատել է Ջ. Դանան՝ 1872-ին) և պրոտերոզոյի (առանձնացրել է Է. Էմոնը՝ 1888-ին): Դրանց միջև եղած սահմանը, արդի պատկերացումներով, համընկնում է ծալքավորության և գրանիտացման խոշոր փուլի հետ, որը տեղի է ունեցել 2600—3000 մլն տարի առաջ: ՍՍՀՄ-ում պրոտերոզոյը սովորաբար բաժանվում է ստորինի, միջինի և վերինի (տես աղյուսակը): Վերին պրոտերոզոյը հաճախ զատում են «ռիֆեյ» («ինֆրաքեմբրի», «սինիյ») անվանումով և ստորաբաժանումով չորս մասի ըստ օրգ. մնացորդների կազմի: Ռիֆեյի վերին ստորաբաժանումը, որն ավելի վաղ վերագրվում էր պրոտերոզոյից պալեոզոյին անցման շերտերին, առանձնացվում է «վենդ» («յուդոմի», «էոքեմբրի») անունով:

| Մինչքեմբրիի ստորաբաժանումները | | | Ստորաբաժանումների ավարտը (մլն տարի) |
|---|---|---|---|
| Պրոտերոզոյ PR | Վերին (ռիֆեյ) | Վենդ | 570 |
| | | վերին | 670 |
| | | միջին | 1000 |
| | | ստորին | 1400 |
| | Միջին | | 1600 |
| | Ստորին | | 1700 |
| Արխեյ AR | | | 2600—3000 |

Մ-ի նստվածքները տարածված են բոլոր մայր ցամաքների հին պլատֆորմների սահմաններում: Վաղ Մ-ի զգալիորեն մետամորֆացված առաջացումները կազմում են հին պլատֆորմների հիմքը և մերկանում դրանց բյուրեղային վահանների (Բալթիական, Ալդանյան, Կանադական) շրջանում: Ապարների շերտերում եղած ընդհատումների ու աններդաշնակությունների և մետամորֆիզմի աստիճանի կտրուկ փոփոխությունների հիման վրա Մ-ում բացահայտված են բարձր տեկտոնամագմատիկ ակտիվության մի շարք փուլեր: Մ-ի նստվածքներում բացակայում է կմախքային ֆաունան, որը հիմք է ծառայում ֆաներոզոյի շերտագրական սանդղակի կազմման համար: Այնուամենայնիվ օրգ. կյանքի զանազան հետքերը բավական շատ են: Ստրոմատոլիտները և օնկոլիտները հաջողությամբ օգտագործվում են առանձին ռեգիոնների սահմաններում վերին պրոտերոզոյի նստվածքային հաստվածքների համադրման և նույնիսկ միջմայրցամաքային համահարաբերակցման համար: Առավել հարուստ և բազմազան է վենդի կենդանական աշխարհը, որը մանրամասն ուսումնասիրվել է Ավստրալիայում և Հարավային Աֆրիկայում արված պեղումների օգնությամբ: Հայտնաբերված բոլոր ձևերը զուրկ են կարծր կմախքային մասերից, և նրանց դրոշմները կարող են պահպանվել միայն բացառիկ դեպքերում: ՍՍՀՄ-ում վաղ Մ-ի նստվածքները մեծ տարածում ունեն: Ամենից լավ նրանք ուսումնասիրված են Բալթիական վահանում և Արևելյան Սիբիրում: Վերին Մ-ի ապարները տարածված են Ուրալում և Տիմանում: Միջին Ասիայի, Ղազախստանի, Հեռավոր Արևելքի ծալքավոր համակարգերում նույնպես հայտնի են Մ-ի նստվածքներ: ՀՍՍՀ տարածքում Մ-ի ապարները (ամֆիբոլիտներ, բյուրեղային թերթաքարեր, ֆիլիտներ, պորֆիրոիդներ) մերկանում են հիմնականում Ծաղկունյաց լեռնաշղթայի առանցքային գոտում՝ Արզական, Բջնի, Ապարան և Հալավար բնակավայրերի միջև ընկած 500 $կմ^2$ տարածության վրա: Մ. շատ հարուստ է օգտակար հանածոներով: Նրա հետ են կապված երկաթի համաշխարհային պաշարների 70%-ը, մանգանի հանքաքարի 63%-ը, կոբալտի 93%-ը, ուրանի և ոսկու 66%-ը ևն: Մ-ի պեգմատիտները կարևոր աղբյուր են փայլարների (մուսկովիտ), խեցեգործական հումքի և հազվագյուտ մետաղների ստացման համար: Մ-ի ամենավերին գոյացումներին են հարում նավթի հնագույն հանքավայրեր (ՌՍՖՍՀ Իրկուտսկի մարզ): ՀՍՍՀ-ում Մ-ի ապարների հետ են կապված երկաթի, տիտանի, հազվագյուտ մետաղների, ոսկու, ինչպես նաև դոլոմիտի, մարմարի, գրաֆիտի, տուրմալինի և տալկի մի շարք հանքավայրեր ու երևակումներ:

*Գրկ.* Стратиграфия и корреляция докембрия, М.—Л., 1960 (Труды XXI Международного геологического конгресса. Доклады советских геологов. Проблема 9); Стратиграфия СССР, т. 1—2, М., 1963; Геология Армянской ССР, т. 2, Е., 1964; Паффенгольц К. Н., Докембрий Кавказа, «Տեղեկագիր ՀՍՍՀ ԳԱ, սերիա գիտություններ Երկրի մասին», 1967, № 5—6:

**ՄԻՆՍԿ**, Բելոռուսական ՍՍՀ մայրաքաղաքը (1919-ի հունվարի 1-ից), Մինսկի մարզի վարչական կենտրոնը: ՍՍՀՄ քաղ., արդ., գիտական և մշակութային կարևոր կենտրոններից է, տրանսպորտային հանգույց: Գտնվում է Մինսկի բարձրության վրա, Սվիսլոչ գետի ափերին: Տարածությունը 184 $կմ^2$ է, բնակչությունը՝ 1,308 հզ. մարդ (1980): Բաժանվում է 9 շրջանի: Կլիման չափավոր ցամաքային է, տարեկան միջին ջերմաստիճանը՝ 5,4°C, հունվարինը՝ −6-ից մինչև −9°C, հուլիսինը՝ 17,8°C, տարեկան տեղումները՝ 646 *մմ*: Պարգևատրվել է Լենինի շքանշանով (1966-ին), 1974-ի հունիսի 26-ին արժանացել է հերոս քաղաքի կոչման:

**Պատմական տեղեկանք**: Առաջին անգամ Մ. հիշատակվում է 1067-ին, որպես ամրոց: XII դարից եղել է Մինսկի իշխանության կենտրոնը, XIV դարից՝ Լիտվական մեծ իշխանության կազմում: 1499-ին քաղաքին տրվել է մագդեբուրգյան իրավունք, XIV դարից դարձել է Մինսկի վոյեվոդության կենտրոնը: 1793-ից, Ռեչ Պոսպոլիտայի 2-րդ բաժանումից հետո, մտել է Ռուսական կայսրության մեջ, 1796-ից Մինսկի նահանգի կենտրոնն էր: 1898-ի մարտի 1—3-ը Մ-ում կայացել է ՌՍԴԲԿ I համագումարը: 1903-ին ստեղծվել է ՌՍԴԲԿ Մինսկի խմբակը: Մ-ի աշխատավորներն ակտիվորեն մասնակցել են 1905—07-ի հեղափոխությանը: 1915-ից՝ մերձճակատային քաղաք, ուր տեղավորված էր Արևմտյան ռազմաճակատի շտաբը: Սովետական իշխանություն Մ-ում հաստատվել է 1917-ի հոկտ. 25 (նոյեմբ. 7)-ին: 1941-ի հունիսի 28-ից 1944-ի հուլիսի 9-ը օկուպացրել են գերմ. ֆաշիստները: 1946—50-ին Մ. վերականգնվել է:



Մինսկ, Հաղթանակի հրապարակը



Մ ի ն ս կ. «Փառքի կուրգանը» (1969, քանդակագործներ՝ Ա. Բեմբել, Ա. Արտիմովիչ)




Մ ի ն ս կ. ԲՍՍՀ ԳԱ գլխավոր մասնաշենքը (1935—39, ճարտ. Ի. Լանգբարդ)

**Տնտեսությունը**: Մ-ի արդ. համախառն արտադրանքի ծավալը 1976-ին 1940-ի համեմատ աճել է 66 անգամ: Այն կազմում է հանրապետության արդ. արտադրանքի մոտ 25%-ը: Արդյունաբերության առաջատար ճյուղերն են մետաղամշակությունն ու մեքենաշինությունը (տալիս են Մ-ի արդ. համախառն արտադրանքի 61%-ը, 1977): Խոշոր ձեռնարկություններից են՝ ավտոմեքենաների, տրակտորների, առանցքակալների, մոտորների, հաստոցաշինական, ավտոմատ գծերի, գործիքաշինական, սարքաշինական, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, մոտոհեծանվային, ժամացույցի, ռադիո, սառնարանների, ճանապարհային մեքենաների, ջեռուցման սարքավորման, վագոնաշինական գործարանները: Թեթև արդյունաբերությունը տալիս է հանրապետության արդ. համախառն արտադրանքի 1/4-ը (1977): Զարգացած է բրդյա գործվածքների (բրդեղենի, մահուդի կոմբինատներ), պատրաստի հագուստեղենի, կոշիկի, կաշվիգալանտերեայի, տրիկոտաժի արտադրությունը: Սննդի արդյունաբերության (տալիս է քաղաքի արդ. արտադրանքի 10,9%-ը) ձեռնարկություններից են մսի և կաթի կոմբինատները, մսի մշակման, մարգարինի, հրուշակեղենի, պահածոների, հացի, գարեջրի գործարանները, ծխախոտի ֆաբրիկան: Կա նաև շինանյութերի,

փայտամշակման, կահույքի արտադրություն, քիմ. արդյունաբերություն: Մ-ում է կենտրոնացած հանրապետության պոլիգրաֆարդյունաբերության 50%-ը: Գործում են պոլիգրաֆկոմբինատը և ֆաբրիկան, 6 տպարան: Էլեկտրաէներգիա ստանում է Բելոռուսական միասնական էներգահամակարգից, գազ՝ Դաշավայից և Տորժոկից: Կառուցվում է մետրոպոլիտեն (1979-ից): Մ-ով անցնում են միութենական և միջազգային բազմաթիվ ավիագծեր:

**Ճարտարապետությունը**: Պահպանված ճարտ. հուշարձաններից են բարոկկո ոճի մենաստանները (XVII դ.), Պետրոպավլովսկի եկեղեցին (1622): Մ-ի ժամանակակից կերպարը կազմավորվել է սովետական շրջանում: 1920—30-ական թթ. կառուցվել են Վ. Ի. Լենինի անվ. գրադարանը (1930—32, ճարտ. Գ. Լավրով), Բելոռուսական ՍՍՀ Կառավարական տունը (1930—33), Բելոռուսական ՍՍՀ ԳԱ գլխավոր մասնաշենքը (1935—39, երկուսն էլ՝ ճարտ. Ի. Լանգբարդ), «Բելոռուս» հյուրանոցը (1938, ճարտ. Ա. Վոինով) են: Գերմանա-ֆաշիստական օկուպացիայի տարիներին Մ-ի բնակելի ֆոնդի 74%-ը ավերվել է: Ետպատերազմյան տարիներին Մ. վերականգնվել և վերանորոգվել է գլխավոր հատակագծի համաձայն (նախագիծն ավարտվել է 1946-ին, ճարտ. Մ. Անդրոսով, Ն. Տրախտենբերգ և ուրիշներ, ճշտվել է 1952-ին, 1958-ին, 1959-ին, 1962-ին, 1964-ին): 1950—60-ական թթ. ստեղծվել է Մ-ի նոր հասարակական կենտրոնը՝ Լենինի, Կենտրոնական, Հաղթանակի, Յակուբ Կոլասի հրապարակների անսամբլներով, որոնք միմյանց են կապ-




Մինսկի ավտոմոբիլային գործարանում



վում Լենինի պողոտայով: Ըստ 1965-ի գլխավոր հատակագծի (ճարտ. Լ. Գաֆո, Ե. Զասլավսկի և ուրիշներ) կառուցվում են օղակաձև նոր մայրուղիներ, խոշոր բնակելի շրջաններ (Չիժովկա, Սերեբրյանկա, Վոստոկ): 1960-ական թթ. նշանավոր կառույցներից են քաղցործկոմի շենքը (1964, ճարտ-ներ՝ Ս. Մուսինսկի, Գ. Սիսոև), Տոլբուխինի փողոցի բնակելի զանգվածը (1966, ճարտ. Յու. Շպիտ և ուրիշներ), Սպորտի պալատը (1966, ճարտ-ներ՝ Ս. Ֆիլիմոնով, Վ. Մալիշև), Ջրասպորտի պալատի համալիրը (1965—69, ճարտ. Օ. Լադիգինա), «Հոբելյանական» հյուրանոցը (1968, ճարտ. Գ. Բենեդիկտով և ուրիշներ): Մ-ում են Վ. Ի. Լենինի (բրոնզ, գրանիտ, 1933, քանդակագործ՝ Մ. Մանիզեր, ճարտ. Ի. Լանգբարդ), Հաղթանակի մոնումենտը (գրանիտ, 1954, ճարտ-ներ՝ Գ. Զաբորսկի, Վ. Կորոլ, քանդակագործներ՝ Զ. Ազգուր, Ա. Բեմբել, Ա. Գլեբով, Ս. Սելիխանով), Յակուբ Կոլասի (բրոնզ, 1972, քանդակագործ՝ Զ. Ազգուր), Յանկա Կուպալայի (բրոնզ, 1972, քանդակագործ՝ Ա. Անիկեյչիկ և ուրիշներ) հուշարձանները:

1977—78-ին Մ-ում գործում էին 177 հանրակրթական դպրոց, 31 պրոֆտեխնիկական ուսումնարան, 23 միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություն, 14 բուհ (այդ թվում՝ Վ. Ի. Լենինի անվ. համալսարանը), 400 նախադպրոցական հիմնարկ: 1978-ին կար 8 թանգարան (այդ թվում՝ Հայրենական պատերազմի պատմության թանգարան և ՌՍԴԲԿ համագումարի տուն-թանգարանը), 50 ակումբային հիմնարկ, 25 կինոթատրոն, 5 թատրոն: Մ-ում է Բելոռուսական ՍՍՀ ԳԱ, որը միավորում է 32 գիտական հիմնարկ: Կա 9 հրատարակչություն: Հրատարակվում է հանրապետական 11 թերթ:

1978-ին Մ-ում կար 22 հիվանդանոցային հիմնարկ՝ 12745 մահճակալով, աշխատում էր 7971 բժիշկ, 14607 միջին բուժաշխատող:

**«ՄԻՆՍԿ»** (թվանշանային հաշվողական մեքենա), ունիվերսալ էլեկտրոնային ԹՀՄ-ների սերիայի անվանումը: Մշակվել է էլեկտրոնային հաշվողական մեքենաների ԳՀԻ-ում (նախկինում՝ Մինսկի էլեկտրոնային հաշվողական մեքենաների կոնստրուկտորական բյուրո): Թողարկվում է 1959-ից: «Մ-1» առաջին սերնդի ԹՀՄ-ների ընտանիքի բազային «Մ.» էր և նախատեսված էր ինժեներական և գիտական խնդիրների լուծման համար: «Մ-2» (1963) ՍՍՀՄ-ում առաջին սերիական մեքենան էր՝ հիմնված կիսահաղորդչային տարրերի վրա (երկրորդ սերունդ), և նախատեսված էր գիտատեխնիկական և պլանատնտեսական խնդիրների լուծման համար: Տնտ. խնդիրների արդյունավետ

լուծման համար ստեղծվեց «Մ-22» (1964) ԹՀՄ, իսկ վերջինի կատարելագործմամբ՝ «Մ-22» (1966) մեքենան: Զուտ տնտ. հաշվարկների համար նախատեսված «Մ-23» մեքենան թողարկվել է 1966-ին: 1968-ին, երկրորդ սերնդի «Մ-32» ունիվերսալ բազմածրագրային մեքենայով (նախատեսված ինժեներատեխնիկական հաշվարկների և ինֆորմացիոն-տրամաբանական խնդիրների լուծման համար) եզրափակվել է «Մ.» անվանաշարի թողարկումը:

**ՄԻՆՍԿԻ ՄԱՐԶ**, Բելոռուսական ՍՍՀ կազմում: Կազմվել է 1938-ի հունվ. 15-ին: Տարածությունը 40,8 հզ. *կմ²* է, բնակչությունը՝ 1,556 հզ. (առանց Մինսկի, 1979): Բաժանվում է 22 վարչական շրջանի: Ունի 18 քաղաք, 24 քտա, 1 կուրորտային ավան: Վարչական կենտրոնը՝ Մինսկ: Պարգևատրվել է Լենինի 2 շքանշանով (1967, 1970):

**Բնությունը**: Մակերևույթը բլրապատ հարթավայր է: Հս-արմ-ում Մինսկի բարձրությունն է (մինչև 346 *մ*, Ձերժինսկայա լեռ, Բելոռուսիայի ամենաբարձր կետը), արլ-ում՝ Կենտրոնաբերեզինյան հարթավայրը, հվ-ում՝ Պոլեսիեի դաշտավայրը: Օգտակար հանածոներից կան կալիումական աղ, քարաղ, տորֆ (պաշարներով և արդյունահանմամբ առաջինը հանրապետությունում), շինարարական ավազ: Կլիման չափավոր ցամաքային է, խոնավ: Հունվարի միջին ջերմաստիճանը —6,1°C-ից մինչև —7,4°C է, հուլիսինը 17,3—18,4°C, տարեկան տեղումները 580—668 *մմ*, վեգետացիայի շրջանը՝ 186—195 օր: Գլխավոր գետերն են Բերեզինան, Պտիչը, Սլուչը, Նեմանը, խոշոր լճերը՝ Նարոչը, Մյադելը, Մյաստրոն, Սվիրը: Գերակշռում են ճմապոդզոլային, տորֆաճահճային և ալյուվիալ հողերը: Տարածքի 37%-ը (մեծ մասամբ արլ. մասը) ծածկված է անտառներով (սոճի, եղևնի, կեչի, լաստենի), 14%-ը՝ ճահիճներով: Կենդանիներից կան գայլ, աղվես, որմզդեղն, գորշուկ, նապաստակ, արջ, եղնիկ, կրծողներ: Մարզի սահմաններում (հս-արմ) է Բերեզինյան արգելոցի մի մասը:

**Բնակչությունը**: 88,8%-ը բելոռուսներ են, բնակվում են նաև ռուսներ, լեհեր, ուկրաինացիներ և այլք: Միջին խտությունը 1 *կմ²* վրա մոտ 38,1 մարդ է, քաղաքային բնակչությունը՝ 36% (1979): Խոշոր քաղաքներն են՝ Մինսկը, Բորիսովը, Մոլոդեչնոն, Սոլիգորսկը, Ժոդինոն, Սլուցկը:

**Տնտեսությունը**: Զարգացած է մեքենաշինությունն ու մետաղամշակությունը (ՍՍՀՄ-ում խոշորագույններից է բելոռուսական ավտոմոբիլային գործարանը Ժոդինոյում), լեռնարդյունաբերության (1978-ին արտադրվել է 9 մլն *տ* կալիումական պարարտանյութ, 2-րդ տեղը ՍՍՀՄ-ում), փայտամշակման, թղթի-անտառաքիմիական, սննդի, կարի արդյունաբերությունը: Արդ. հիմնական կենտրոններն են. Ժոդինոն, Բորիսովը, Մոլոդեչնոն, Սլուցկը, Սոլիգորսկը: Էներգետիկ արդյունաբերությունը հիմնված է տորֆի և բերովի վառելանյութերի (նավթամթերք, բնական գազ) բազայի վրա և գործում է Բելոռուսական միասնական էներգահամակարգում:

1977-ին մարզում կար 329 կոլեկտիվ, 227 սովետական տնտեսություն, ցանքատարածությունները կազմում էին 1924,7 հզ. *հա*: Գյուղատնտեսության հիմնական ճյուղերն են մսակաթնատու անաս-



նապահությունը, խոզաբուծությունը, կարտոֆիլի, տեխ. (վուշ, շաքարի ճակնդեղ) և հացահատիկային կուլտուրաների մշակությունը: Մարզի հվ-ում զարգացած է պտղաբանջարաբուծությունը, մերձքաղաքային շրջաններում՝ թռչնաբուծությունը (ձվի արտադրությամբ առաջինն է հանրապետությունում):

Երկաթուղիների երկարությունը 866 *կմ* է, ավտոճանապարհներինը՝ 9,7 հզ. *կմ* (1979): Մարզի քաղաքները ավիագծերով կապված են Մինսկի հետ:

1978—79 ուս. տարում մարզում (առանց Մինսկի) կար 583 նախադպրոցական հիմնարկ, 1507 հանրակրթական դպրոց, 14 միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություն, 25 պրոֆտեխնիկական ուսումնարան: 1978-ին գործում էին 1236 մասսայական գրադարան, 1378 կինոսարք, 1214 ակումբային, 12 գիտահետազոտական հիմնարկ, 10 թանգարան, 174 հիվանդանոցային հիմնարկ՝ 19880 մահճակալով: Աշխատում էին 3833 բժիշկ: Առողջարանային կենտրոններ են Նարոչը և Ժդանովիչը: Լույս է տեսնում «Մինսկայա պրավդա» (1950-ից) մարզային թերթը:

**ՄԻՆՏՈ** (Minto) Ուիլյամ (1845—1893), շոտլանդացի տրամաբան: Աբերդինի համալսարանի պրոֆեսոր, Ջ. *Միլի* հետևորդ: Աշխատությունները վերաբերում են ինդուկտիվ տրամաբանությանը, ինդուկտիվ մտահանգումների մեթոդաբանությանը, տրամաբանական մտահանգումներում սխալների և շեղումների հաղթահարման եղանակներին: Ըստ Մ-ի, տրամաբանությունը մտքի սխալներից խուսափելու միջոցներ մշակող գործնական գիտություն է:
*Ի. Զաալյավսկի*

**ՄԻՆՑ** Իսահակ Իզրաիլևիչ (ծն. 1896), սովետական պատմաբան, ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս (1946, թղթակից անդամ 1936-ից), սոցիալիստական աշխատանքի հերոս (1976): ՍՄԿԿ անդամ 1917-ից: 1918—1920-ին եղել է քաղաշխատող կարմիր բանակում: 1926-ին ավարտել է Կարմիր պրոֆեսուրայի ինստ. (Մոսկվա), այնուհետև գիտական և մանկավարժական աշխատանք է տարել Մոսկվայի համալսարանում, ՍՄԿԿ ԿԿ-ին կից բարձրագույն կուսակցական դպրոցում, Վ. Ի. Լենինի անվ. մանկավարժական ինստ-ում, Հասարակական գիտությունների ակադեմիայում, ՍՍՀՄ ԳԱ պատմության ինստ-ում: 1962-ից «Հոկտեմբերյան մեծ հեղափոխության պատմություն» կոմպլեքսային պրոբլեմի ՍՍՀՄ ԳԱ գիտխորհրդի նախագահն է: Աշխատությունները վերաբերում են ՍՄԿԿ պատմությանը, Հոկտեմբերյան հեղափոխությանը, 1918—20-ի քաղաքացիական պատերազմին, սովետական հասարակության պատմությանն ու միջազգային հարաբերություններին: «Սովետական Միության կոմունիստական կուսակցության պատմություն» (1959) հեղինակներից է, ՍՄԿԿ պատմություն բազմահատորյակի գլխավոր խմբագրության անդամ: Պետ. (1943, 1946), լենինյան (1974) մրցանակների դափնեկիր է: Պարգևատրվել է Լենինի, Հոկտեմբերյան հեղափոխության շքանշաններով և մեդալներով:

*Երկ.* Великая Октябрьская социалистическая революция и прогресс человечества, М., 1967; История Великого Октября, т. 1—3, М., 1967—73. *Կ. Խուդավերդյան*

**ՄԻՆՈՒՍ** (լատ. minus — ավելի քիչ, պակաս), «հանում» գործողության նշանը (տես *Հանրահաշվական գործողություններ*): Նշանակում են՝ «—»:

**ՄԻՆՈՒՍԻՆՍԿԻ ԳՈԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ** (Խակասա-Մինուսինսկի), Կրասնոյարսկի երկրամասի հարավում, Մինուսինսկի միջլեռնային իջվածքի հարավային մասը: Ռելիեֆը բլրահարթավայրային է՝ կտրտված հովիտներով, բարձրությունը՝ 200—700 *մ*: Կլիման խիստ ցամաքային է: Խոշոր գետը Ենիսեյն է: Կան աղի և քաղցրահամ լճեր: Մ. գ. Հարավային Սիբիրի լեռների կարևորագույն գյուղատնտ. շրջաններից է: Զարգացած է այգեգործությունը, մսակաթնատու անասնապահությունը, ձիաբուծությունը: Կան երկաթի, քարածխի և այլ հանքավայրեր:

**ՄԻՇԱ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Խլաթի գավառի Մամռտանքի գավառակում: 1909-ին ուներ 11 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին:

**ՄԻՇԵԼ** (Michel) Լուիզ (1830—1905), ֆրանսիացի հեղափոխական, գրող: Փարիզի կոմունայի (տես *Փարիզի կոմունա 1871*) ակտիվ մասնակից, մարտնչել է բարիկադների վրա: Կոմունայի պարտությունից հետո բանտարկվել և 1873-ին արտաքսվել է Նոր Կալեդոնիա: 1880-ին ներում է ստացել և վերադարձել Ֆրանսիա: Մասնակցել է բանվորական շարժմանը, պրոպագանդել անարխիստների գաղափարները, եղել Պ. *Կրոպոտկինի* համախոհներից: 1883-ին նորից ձերբակալվել է և ազատվել 1886-ին՝ ներումով: 1890—95-ին տարագիր էր Լոնդոնում: Մ. գրել է բանաստեղծություններ, վեպեր, պիեսներ՝ շարունակելով ռոմանտիզմի (Է. Սյու, Ժ. Սանդ, Վ. Հյուգո) առաջադեմ ավանդույթները: Գեղարվեստական երկերում Մ. խարազանել է բուրժ. բարոյականությունն ու բարքերը, հանդես եկել հօգուտ կանանց ազատագրման:

**ՄԻՇԼԵ** (Michelet) Ժյուլ (1798—1874), ֆրանսիացի պատմաբան, մանր բուրժուազիայի գաղափարախոս: Բարոյագիտական և քաղ. գիտությունների ակադեմիայի անդամ (1838), Կոլեժ դը Ֆրանսի պրոֆեսոր: Հուլիսյան միապետության տարիներին, որպես կաթոլիկ եկեղեցու դեմ կրքոտ հակառակորդ դարձել է ռադիկալ (արմատական) ուսանողության կուռքը: Եղել է «լիբերալ միապետության», այնուհետև՝ հանրապետության կողմնակից: Ընդունել է Ֆրանսիական մեծ հեղափոխությունը, սակայն բացասաբար է վերաբերվել *յակոբինյանների* գործունեությանը, կոմունիստական գաղափարներին (տնտ. անհավասարությունը համարել է աստվածային օրենք): Մ-ի կարծիքով պատմության հերոսը ժողովուրդն է (չբաժանելով դասակարգերի): «Ֆրանսիայի պատմություն» (մինչև 1789-ը) բազմահատոր և «Ֆրանսիական հեղափոխության պատմություն» աշխատություններում փորձել է բացահայտել ֆրանս. ժողովրդի հոգեբանությունը, «ժողովրդական ոգին»:

*Երկ.* Œuvres complètes, v. 1—40, P., 1893—98; Обозрение новейшей истории, СПБ, 1838; История XIX в., т. 1—3, СПБ, 1882—84.

**ՄԻՇԿՈԼՑ** (Miskolc), քաղաք Հունգարիայի հյուսիսում, Բորշոդ Աբաույ Զեմպլեն մեդիեի վարչական կենտրոնը: 200 հզ. բն. (1976): Տրանսպորտային հանգույց է, երկրի երկրորդ արդ. կենտրոնը Բուդապեշտից հետո: Կան մետալուրգիա, ծանր մեքենաշինություն, շինանյութերի, սննդի, կարի, տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններ, պոլիտեխնիկական ինստ., Մ-ի մոտ՝ գորշ ածխի արդյունահանություն, ջերմուկաբուժական կուրորտներ (Տապոլցա և Լիլլաֆյուրեդ): Պահպանվել են ամրոցի (Դիոշդյոր, XIII—XVII դդ.) ավերակներ և գոթական եկեղեցի (XV—XVI դդ.):

**ՄԻՇՎԻԼՅԱՆ** Ռոմանոս Հովհաննեսի [5.3.1845, Ղզլար (Դաղստան)—26.9.1923, Ղզլար], հայ բժիշկ, հասարակական գործիչ: Բժշկ. գիտ. դ-ր (1891): Ավարտել է Պետերբուրգի կայսերական բժշկավիրաբուժական ակադեմիան (1870) և աշխատել որպես զինվորական բժիշկ: 1880-ին եղել է Խասավյուրտի զինվորական հոսպիտալի, ապա՝ Ղզլարի զինվորական գնդի բժիշկ, 1886—96-ին՝ Ղզլարի զինվորական հոսպիտալի գլխավոր, 1896-ին՝ II կազակային կամավոր դիվիզիայի բժիշկ: 1898-ին պաշտոնաթող է եղել որպես պետ. խորհրդական: Մ-ի և Ա. Սուլթանշահի նախաձեռնությամբ 1908-ին Ղզլարում բացվել է հիվանդանոց, որը նա ղեկավարել է ավելի քան 15 տարի: 1909-ից եղել է հայկ. երկսեռ դպրոցների հոգաբարձու և օրիորդաց գիմնազիայի հոգաբարձական խորհրդի նախագահը: Մ-ին հատուկ անկյուն է հատկացված Ղզլարի հայրենագիտական թանգարանում:
*Ա. Զանչուղազյան*

**ՄԻՇՈՒՍՏԻՆ** Եվգենի Նիկոլաևիչ [ծն. 9(22).2.1901, Մոսկվա], սովետական մանրէաբան: ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս (1974), ՌՍՖՍՀ գիտ. վաստ. գործիչ (1961): 1924-ին ավարտել է Մոսկվայի Կ. Տիմիրյազևի անվ. գյուղատնտ. ակադեմիան: 1924—31-ին աշխատել է ՀամԳԳԱ ինստ-ներում, 1939-ից՝ ՍՍՀՄ ԳԱ մանրէաբանության ինստ-ի հողերի մանրէաբանության բաժնի վարիչ: 1961-ից Մոսկվայի Կ. Տիմիրյազևի անվ. գյուղատնտ. ակադեմիայի մանրէաբանության ամբիոնի վարիչ: Աշխատանքները վերաբերում են հողերի մանրէաբանության, հողային միկրոֆլորայի տարածման, աշխարհագրական գոտիականության, մթնոլորտային ազոտի կենսբ. ֆիքսման հարցերին: Պետ. մրցանակի դափնեկիր է (1951, 1970): Պարգևատրվել է Լենինի 2 և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով:

**ՄԻՈ...** (< հուն. μῦς — մկան), բարդ բառերի սկզբնամաս. օգտագործվում է մկաններին առնչվող տերմիններում (օրինակ՝ *միոգլոբին*, *միոպին*, *միոնեմ*, միոկարդիտ):

**ՄԻՈԳԵՈՍԻՆԿԼԻՆԱԼ** (< հուն. μείων — քիչ, նվազ), տես *Գեոսինկլինալ*:

**ՄԻՈԳԼՈԲԻՆ** (< *միո*... և *գլոբին*), մ կ ա ն ա գ լ ո բ ի ն, գլոբուլինային սպիտակուց, որն իրականացնում է *մկաններում* մոլեկուլային թթվածնի պահեստավորումը և այն հասցնում բջիջների օքսիդացնող համակարգին: Կազմված է ավելի քան 150 ամինաթթվային մնացորդ պարունակող շղթայից: Առաջին *սպիտակուցն* է, որի կառուցվածքը պարզված է ռենտգենակառուցվածքային վերլուծության եղանակով (Ջ. Քենդրյու և աշխատակիցներ, 1957—1960): Մ-ի մոլ. զանգվածը 17.000 է: *Հեմոգլոբինի* նման մոլեկուլային թթվածինը ($O_2$) կապող ակտիվ կենտրոնը հեմն է: Մ. $O_2$-ի հետ դարձելիորեն կապվում է թթվածնի ցածր մասնական (պարցիալ) ճնշման պայմաններում: Դա ֆիզիոլոգիական մեծ նշանակություն ունի, որովհետև մկանի կծկման ժամանակ թթվածնի ճնշումը խիստ ընկնում է մազանոթների սեղմման հետևանքով, և հենց այդ ժամանակ Մ-ից անջատվում է մկանային աշխատանքի համար անհրաժեշտ $O_2$: Մ-ի պարունակությունը ողնաշարավոր կենդանիների մկաններում 2% է, ջրի տակ երկար մնացող կետերի, փոկերի ևն մկաններում՝ մինչև 20%:

**ՄԻՈԶԻՆ**, թելիկային սպիտակուց. մկանների կծկողական թելիկների հիմնական բաղադրամասերից մեկն է, կազմում է մկանային սպիտակուցների ընդհանուր քանակի 40—60%-ը: Մոլ. զանգվածը մոտ 500 000 է: Պրոտեոլիտիկ ֆերմենտների ազդեցությամբ քայքայվում է թեթև և ծանր մերոմիոզինի (մոլ. զանգվածները՝ մոտ 150 000 և մոտ 350 000): Մկանաթելիկների մյուս սպիտակուցի՝ ա կ տ ի ն ի հետ միանալով՝ առաջացնում է ակտոմիոզին, որը մկանների կծկողական համակարգի հիմնական կառուցվածքային տարրն է: Մ. ունակ է ճեղքելու ադենոզինեռֆոսֆորական թթուն, որի հետևանքով վերջինիս մակրոէրգային կապերի քիմ. էներգիան վերածվում է մկանային կծկման մեխանիկական էներգիայի: Մ-ին նման սպիտակուցներ են հայտնաբերված բազմաթիվ նախակենդանիների, բակտերիաների, կենդանիների և որոշ բույսերի մտրակիկներում, թարթիչներում և շարժողական այլ կառուցվածքներում:

**ՄԻՈԿԱՐԴԻՈԴԻՍՏՐՈՖԻԱ**, տես *Սրտամկանի սնուցախանգարում*:

**ՄԻՈԿԱՐԴԻՏ** (*միո*... և հուն. καρδία — սիրտ), տես *Սրտամկանի բորբոքում*:

**ՄԻՈՆԵՄՆԵՐ** (< *միո*... և հուն. νῆμα — թել), նախակենդանիների ցիտոպլազմայում, մարմնի մակերևութային շերտերում գտնվող սպիտակուցային թելիկներ: Լինում են հարթ կամ լայնակի մանրագծված և մկանաթելիկների նման օժտված են կրկնակի ճառագայթաբեկման հատկությամբ: Կազմված են մի քանի տասնյակ, հաճախ՝ հարյուրավոր թելիկներից, որոնց տրամագիծը 3—25 *նմ* է: Կծկվելիս Մ. հաստանում են, որից նախակենդանու մարմինը կամ մասերը (օրինակ, շոշափուկները, ըմպանը) ձևափոխվում են:

**ՄԻՈՑԵՆ** (<հուն. μείων — քիչ, նվազ և καινός — նոր), *նեոգենի* ստորին բաժինը: Ստորաբաժանվում է երեք ենթաբաժինների: Անջատել է անգլ. երկրաբան Չ. *Լայելը*՝ 1841-ին:

**ՄԻՉԵՐԼԻԽ** (Mitscherlich), Մ ի տ չ ե ր լ ի խ, Էյլհարդ (1794—1863), գերմանացի քիմիկոս: Բեռլինի համալսարանի պրոֆեսոր (1822-ից), Պետերբուրգի ԳԱ արտասահմանյան թղթակից անդամ (1829): Հայտնագործել է իզոմորֆիզմի (1819) և դիմորֆիզմի (1821) երևույթները: Բենզոյական թթուն կրի հետ տաքացնելով ստացել է (1833) մաքուր բենզոլ: Առաջինն է ստացել նիտրոբենզոլ, ազոբենզոլ և բենզոլի որոշ սուլֆաթթուներ: Կանխատեսել է (1833) էսթերացման պրոցեսում ծծմբական թթվի կատալիտիկ դերը, առաջարկել նման ռեակցիաներն անվանել կոնտակտային:

**ՄԻՉԵՐԼԻԽ** (Mitscherlich), Մ ի տ չ ե ր լ ի խ, Էյլհարդ Ալֆրեդ (1874—1956), գերմանացի ագրոքիմիկոս, բույսերի ֆիզիոլոգ: Գերմ. ԳԱ (1947), ԳԴՀ գյուղատնտ. գիտությունների (1951) և արտասահմանյան մի շարք ակադեմիաների անդամ: Եղել է Քյոնիգսբերգի (1906-ից), Բեռլինի Հումբոլդտի անվ. (1950-ից) համալսարանների պրոֆեսոր, 1949-ից՝ Բեռլինի բույսերի բերքատվության բարձրացման ինստ-ի դիրեկտոր: Զբաղվել է ագրոքիմիայի, բույսերի ֆիզիոլոգիայի և բերքատվության բարձրացման հարցերով: Մշակել է անոթներում բույսերի աճեցման մեթոդ: ԳԴՀ Ազգային մրցանակի դափնեկիր է (1949):

**ՄԻՉԻԳԱՆ** (Michigan, տեղացի հնդկացիների լեզվով՝ մեծ լիճ), լիճ Հյուսիսային Ամերիկայում, ԱՄՆ-ում, Մեծ լճերի համակարգում: Տարածությունը 58 հզ. *կմ*² է, առավելագույն խորությունը՝ 281 *մ*: Միացած է Հուրոն լճին Մաքինո նեղուցով, Միսսիսիպիի համակարգին՝ Չիկագո-Լոկպորտ նավարկելի ջրանցքով: Ափերը բլրային են՝ թույլ կտրտված, դարավանդներով շրջապատված: Մակընթացությունը կեսօրյա է: Լճի հս. մասը սառչում է դեկտեմբերից ապրիլ: Կենդանական աշխարհին աղքատացել է ջրի աղտոտման հետևանքով: Խոշոր նավահանգիստներն են Չիկագոն և Միլուոկին:

**ՄԻՉԻԳԱՆ** (Michigan), նահանգ ԱՄՆ-ի հյուսիսում, Մեծ լճերի մոտ: Սահմանակից է Կանադային: Տարածությունը 150,8 հզ. *կմ*² է, բն. 9,08 մլն (1978, 73,8%-ը՝ քաղաքային): Վարչական կենտրոնը՝ Լանսինգ, խոշոր քաղաքը՝ Դետրոյտ: Մակերևույթը գերազանցապես բլրային հարթավայր է, հս-արմ-ում կան մինչև 604 *մ* բարձրության լեռնազանգվածներ: Կլիման բարեխառն է: Մ. ԱՄՆ-ի առաջատար արդ. շրջաններից է: Կարևոր ճյուղը ավտոմոբիլային արդյունաբերությունն է: Դետրոյտում, նրա արվարձաններում, ինչպես նաև Ֆլինթ, Լանսինգ և այլ քաղաքներում տեղաբաշխված են «Ջեներալ մոտորս», «Ֆորդ» և «Կրայսլեր» ավտոմոբիլային մոնոպոլիաների վարչությունները, լաբորատորիաները և կարևոր գործարանները: Կապված ավտոմոբիլային արդյունաբերության հետ՝ զարգացած է հատուկ պողպատի և բարակ թիթեղների ձուլումը, սև և գունավոր մետաղների մշակումը, հաստոցների, սարքերի, էլեկտրասարքերի, լաքերի, ներկերի, ռետինի արտադրությունը: Զարգացած է նաև ռազմ., քիմ., սիլիկատախեցեգործական, սննդի, փայտամշակման, կահույքի, թղթի արդյունաբերությունը: Արդյունահանվում է երկաթի և պղնձի հանքաքար, կերակրի աղ: Գյուղատնտեսությունն ունի կաթնաբանջարաբոստանային ուղղություն: Մշակում են մրգեր, խաղող, շաքարի ճակնդեղ, կերային կուլտուրաներ: Մեծ լճերում զարգացած է նավագնացությունը: Միչիգան և Վերին լճերը տուրիզմի շրջաններ են:

**ՄԻՉՈՒՐԻՆ** Իվան Վլադիմիրովիչ [15(27).10.1855—7.6.1935], սովետական կենսաբան, ՍՍՀՄ-ում պտղատու, հատապտղատու և այլ կուլտուրաների գիտական *սելեկցիայի* հիմնադիր, ՍՍՀՄ ԳԱ պատվավոր անդամ (1935), ՀամԳԳԱ ակադեմիկոս (1935): Պտղատու բույսերի նոր սորտերի ստացման աշխատանքները սկսել է 1875-ին, Տամբովի նահանգի Կոզլով (այժմ՝ Միչուրինսկ) քաղաքում: 1899-ին քաղաքի մերձակայքում ձեռք է բերել նոր հողամաս, որտեղ աշխատել ու ապրել է մինչև կյանքի վերջը: Մ-ի հետազոտությունները գնահատվել և ծավալվել են


Ի. Վ. Միչուրին

միայն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո: Վ. Ի. Լենինի ցուցումով Մ-ի փորձարարական տնկարանը 1922-ին վերափոխվել է պետ. հիմնարկության, որի բազայի վրա 1928-ին կազմակերպվել է պտղատու-հատապտղատու կուլտուրաների սելեկցիոն-գենետիկական կայան (1934-ից՝ Ի. Վ. Միչուրինի անվ. կենտրոնական գենետիկական լաբորատորիա): Մ. մեծ ավանդ ունի *գենետիկայի* զարգացման գործում: Նա ուսումնասիրել է ժառանգականությունը՝ կապված օնտոգենեզի օրինաչափությունների և արտաքին միջավայրի հետ, ստեղծել ուսմունք դոմինանտության մասին: Ապացուցել է, որ դոմինանտությունը պատմական կատեգորիա է և կախված է ելակետային ձևերի ժառանգականությունից, օնտոգենեզից և ֆիլոգենեզից, հիբրիդների անհատական առանձնահատկություններից, ինչպես նաև դաստիարակման պայմաններից: Հիմնավորել է արտաքին պայմանների ազդեցությամբ գենոտիպի փոփոխման հնարավորությունը:

Մ. գյուղատնտ. կուլտուրաների գիտական ս ե լ ե կ ց ի ա յ ի հիմնադիրներից է: Նրա մշակած կարևորագույն հարցերն են՝ միջսորտային և հեռավոր հիբրիդացումը, հիբրիդների դաստիարակման մեթոդները՝ կապված օնտոգենեզի օրինաչափությունների հետ, դոմինանտության կառավարումը, մենտորի մեթոդը (զարգացող հիբրիդի հատկանիշների փոփոխումը պատվաստացուի կամ պատվաստակալի ազդեցությամբ), սերմնաբույսերի գնահատումը և ընտրությունը,

ֆիզիկական և քիմ. գործոնների օգնությամբ սելեկցիայի պրոցեսի արագացումը: Ստեղծել է տրամախաչման համար ելակետային ձևերի զույգ ընտրության տեսությունը, հաստատել, որ ինչքան հեռու են տրամախաչվող բույսերի զույգերը, այնքան հիբրիդային սերմնաբույսերը հեշտ են հարմարվում նոր պայմաններին: Առաջարկել է հեռավոր հիբրիդացման ժամանակ անհամատեղելիության գենետիկական պատնեշի հաղթահարման մեթոդներ՝ երիտասարդ հիբրիդների փոշոտումը առաջին ծաղկման ժամանակ, նախնական վեգետատիվ մերձեցումը, միջնորդի կիրառումը, փոշոտումը՝ ծաղկափոշու խառնուրդով ևն: ՍՍՀՄ-ում շրջանացված են հետևյալ միչուրինյան սորտերը. խնձորենու՝ Պեպին շաֆրանկա, Սլավյանկա, Բեսսեմյանկա, Միչուրինսկայա, Բելֆլյոր-կիտայկա ևն, տանձենու՝ Բերե զիմնյայա Միչուրինա, բալենու՝ Նադեժդա Կրուպսկայա, Պլոդորոդնայա Միչուրինա ևն:

Մ. պարգևատրվել է Լենինի, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով:

*Երկ.* Соч., 2 изд., т. 1—4, М., 1948; Итоги шестидесятилетних работ, М., 1950.

**ՄԻՉՈՒՐԻՆԱ-ՍԱՄՈՅԼՈՎԱ** Վերա Արկադևնա (1886—1948), ռուս սովետական դերասանուհի: ՍՍՀՄ ժող. արտիստուհի (1939): Սամոյլովների հայտնի դերասանական ընտանիքից: Մ-Ս-ի ստեղծագործական ամբողջ կյանքը կապված է եղել Ալեքսանդրյան թատրոնին (այժմ՝ Լենինգրադի Պուշկինի անվ. դրամայի ակադեմիական թատրոն): Դերերից են՝ Ռանևսկայա (Ա. Չեխովի «Բալենու այգին»), Լեդի Միլֆորդ (Շիլլերի «Սեր և խարդավանք»), Քսենյա Միխայլովնա (Ռոմաշովի «Հրե կամուրջ»), Պոլինա (Մ. Գորկու «Թշնամիներ») ևն: ՍՍՀՄ պետ. մրցանակ (1943):

**ՄԻՉՈՒՐԻՆՍԿ** (մինչև 1932-ը՝ Կ ո զ լ ո վ), քաղաք ՌՍՖՍՀ Տամբովի մարզում, Լեսնոյ Վորոնեժ գետի ափին: Երկաթուղային հանգույց է: 102 հզ. բն. (1980): Արդյունաբերությամբ և մշակույթով մարզի երկրորդ քաղաքն է (Տամբովից հետո): Կան մխոցային օղակների, շոգեքարշերի, ավտոնորոգման, ավտոպոմպերի և այլ գործարաններ, պահածոների և մսի կոմբինատներ, կարի և գործվածքային ֆաբրիկաներ, շինանյութերի արտադրություն: Գործում են պտղի-բանջարեղենի և մանկավարժական ինստ-ներ, երկրային մեխանիկական, սննդի արդյունաբերության, տեխնոլոգիական տեխնիկումներ, բժշկ. ուսումնարան ևն: Մ. գիտական այգեգործության միութենական կենտրոն է: Մ-ում են Ի. Վ. Միչուրինի անվ. գենետիկայի կենտրոնական լաբորատորիան, Ի. Վ. Միչուրինի անվ. պտղաբուծական ԳՀԻ-ն, Ի. Վ. Միչուրինի տուն-թանգարանը: Կա դրամատիկական թատրոն, հայրենագիտական թանգարան: Մ-ի շրջանում կան խոշոր պտղատնկարաններ և այգեգործական-պտղաբուծական սովետական տնտեսություններ: Հիմնադրվել է 1636-ին: Մ. է կոչվել Ի. Վ. *Միչուրինի* անունով:

**ՄԻՋԱ**, Մ ի ջ ա ս, գավառ Մեծ Հայքի Մոկք նահանգում, Ջերմ գետի (Արևելյան Տիգրիս) Կեցան (այժմ՝ Քեսան) վտակի ստորին հոսանքի շրջանում: Համապատասխանում է հետագա Բիթլիսի նահանգի Սամոռտանքի գավառին: Կենտրոնն էր Միջա ավանը (այժմ՝ գյուղ), որն ըստ Շապուհ Բագրատունու ուներ բերդ (այժմ՝ ավերակ):

*Թ. Հակոբյան*

**ՄԻՋԱԳԵՏՔ** (հուն. Μεσοποταμία, < μέσος — միջին, միջև և ποταμός — գետ), բնամարզ Արևմտյան Ասիայում, Տիգրիս և Եփրատ գետերի ավազանում: Հին Արևելքի խոշոր մշակութային կենտրոններից: Ընդգրկում է Միջագետքի հարթավայրը և Ջեզիրե սարավանդը: Կլիման հս-ում մերձարևադարձային է, հվ-ում՝ արևադարձային, անապատային: Հունվարի միջին ջերմաստիճանը Բաղդադում մոտ 10°C է, հուլիսինը՝ 34°C: Տարեկան տեղումները՝ 163 *մմ*: Հիմնական գետերն են Տիգրիսն ու Եփրատը: Տարածված են մերձարևադարձային և արևադարձային անապատները, ծայրամասերում՝ կիսաանապատները, գետերի երկարությամբ՝ տեղ-տեղ սրահային անտառները: Հս-ում կան նավթի հարուստ հանքավայրեր (Քիրքուք ևն): Բնակիչները զբաղվում են քոչվորական անասնապահությամբ, ոռոգովի հողագործությամբ, փյունիկյան արմավենու մշակությամբ:

Մ-ի Մասիոս լեռնապարից հս. գտնվող երկրամասը մատենագրության մեջ կոչվել է *Միջագետք Հայոց* (Հայկական Մ.), Եփրատի և նրա վտակ Խաբուրի միջև գտնվող Մ-ի մասը՝ Միջագետք Ասորվոց: Մ-ի տարածքում մ. թ. ա. IV—III հազարամյակներում ձևավորվել են վաղ դասակարգային պետություններ, մ. թ. ա. III հազարամյակի վերջին՝ *Աքքադը*, *Ուրը* ևն: Մ. թ. ա. II հազարամյակի սկզբին Մ-ի հվ-ում կազմավորվել է *Բաբելոն* պետությունը: Հետագայում Մ. գտնվել է Ասորեստանի (մ. թ. ա. IX—VI դդ.), Նոր Բաբելոնական թագավորության (մ. թ. ա. VII—VI դդ.), Աքեմենյանների (մ. թ. ա. VI—IV դդ.), Ալեքսանդր Մակեդոնացու (մ. թ. ա. IV դ. վերջ), Սելևկյանների (մ. թ. ա. IV դ. վերջ —II դ.), Պարթևական (մ. թ. ա. III—մ. թ. III դդ., ընդհատումներով) պետության կազմում: Մ. թ. 114—117-ին նվաճել է Հռոմի կայսր Տրայանոսը: Հուստինիանոս I-ի ժամանակ (527—565) Մ-ի զգալի մասը գտնվել է Բյուզանդիայի տիրապետության տակ, VII դարից՝ Արաբական խալիֆայության կազմում: X դ. Եփրատի վերին հոսանքում, նրա ձախ ափին կազմվել է բյուզանդական Մ. (Մեսոպոտամիա) բանակաթեմը, որի մեջ մտել են Բարձր Հայքի, Ծոփքի արմ. գավառները, Կամախը և Երզնկան: XI դ. Մ. նվաճել են սելջուկները, XIII դ.՝ մոնղոլները, XVI դ. սկզբին Սեֆյանների գերիշխանության տակ էր, XVII դ.—1918-ին՝ Օսմանյան կայսրության կազմում: Առաջին համաշխարհային պատերազմից հետո Մ-ի մեծ մասը գտնվում է Իրաքի կազմի մեջ, մնացածը՝ Սիրիայի և Թուրքիայի:

Մ. թ. ա. I դ. Մ-ի զգալի մասը գտնվել է հայկ. պետության կազմում: Մ-ի նվաճած մասը Տիգրան Բ Մեծը դարձրել է նահանգ և կառավարիչ նշանակել իր եղբայր Գուրասին: Մ. թ. ա. 66-ի հայ-հռոմեական հաշտությամբ Տիգրան Բ Մեծը կորցրել է Մ-ի հողերը, բացառությամբ Մեծ Հայքի մաս կազմող Հայկական Մ-ի: Մ. թ. ա. 64-ին Տիգրան Բ Մեծը հռոմեացիների օգնությամբ պարթևներից վերադարձել է Հյուսիսային Մ-ի մի մասը՝ *Մծբին* քաղաքով: Մինչև մ. թ. 37-ը Մեծ Հայքի հվ. սահմանը Մ-ում անցել է Մասիոս լեռներով: Ըստ Մովսես Խորենացու, Հայոց արքա Սանատրուկը (34—35) վերակառուցել է երկրաշարժից ավերված Մծբինը և դարձրել Մեծ Հայքի մայրաքաղաքը (34—37): 37-ին հռոմեա-պարթևական դաշնագրով պարթևները Մեծ Հայքից վերցրել են Հյուսիսային Մ-ի մի մասը (Միգդոնիա)՝ Մծբին քաղաքով և Հայկական Մ-ի հետ միացրել պարթևներից կախում ունեցող Ադիաբենեի թագավորությանը: XI դ. Բյուզանդիայի և սելջուկթուրքերի ասպատակությունների հետևանքով Հայաստանից Մ. են գաղթել բազմահազար հայեր և ստվարացրել հայկ. կենտրոնները: X—XI դդ. Մ-ի մի մասը մտել է Կիլիկիայի արլ-ում և Ասորիքում առաջացած հայկ. իշխանությունների (*Գող Վասիլի*, *Փիլարտոս Վարաժնունու*) մեջ: Մ-ում ընդարձակ տիրույթներ ունեին Պահլավունիները: 1046-ին *Գրիգոր Մագիստրոս Պահլավունին* նշանակվել է Մ-ի բյուզանդական կառավարիչ: Հայկական պետականության և XII դ. կեսին Մ-ում հայկ. իշխանությունների անկումից հետո Հայկական Մ. և ընդհանրապես Մ. շարունակել է մնալ հայերի տնտ. և մշակութային կենտրոններից մեկը:

**ՄԻՋԱԳԵՏՔ ՀԱՅՈՑ**, Հ ա յ կ ա կ ա ն Մ ի ջ ա գ ե տ ք, նահանգ Մեծ Հայքում, Միջագետքի հյուսիս-արևմուտքում: Ընդգրկել է Մասիոս (Տուր-Աբդին) լեռնաշղթայի հս., մասամբ՝ հվ. շրջանները: Հս-ից սահմանակից էր Ծոփք և Աղձնիք նահանգներին, հվ-ից՝ Ասորվոց Միջագետքին, արմ-ից (Եփրատ գետով)՝ Կոմմագենեին, հվ-արլ-ից՝ Ադիաբենեին: Արգավանդ հողերը ոռոգվում էին Եփրատի և Արևմտյան Տիգրիսի բազմաթիվ վտակներով: Հայտնի էր խաղողի, բամբակի, ցորենի ևնի մշակությամբ, զինեգործությամբ, ոչխարաբուծությամբ և ձիաբուծությամբ: Հարուստ է նավթի պաշարներով: Հին անտառներն այժմ մեծ մասամբ ոչնչացվել են: Մինչև I դ. Մ. Հ. եղել է Մեծ Հայքի բաղկացուցիչ երկրամասերից մեկը և ունեցել զրեթե միատարր հայ բնակչություն: Այնուհետև դառնալով հռոմ. և պարթև. պետությունների միջև պատերազմների թատերաբեմ, 37-ին անջատվել է Մեծ Հայքից: Այդ պատճառով VII դ. հայկ. «Աշխարհացոյց»-ում չի հիշատակվում որպես Մեծ Հայքի նահանգ, թեև նրա հս. գավառները մտել են Աղձնիք և Ծոփք նահանգների մեջ: Մ. Հ-ում հիշվող հին բնակավայրերից նշանավոր էին Ամիդ, Մծբին, Ուռհա քաղաքները, Բնաբեղ, Մարդե բերդամրոցները ևն:

Թուրք. տիրապետության ժամանակ տրոհված էր Ուրֆայի կամ Ռազզայի, Բիրեջիքի, Մոսուլի, Ջեզիրեի, Սինջարի և Մերդինի փաշայությունների մեջ, որոնցում զանգվածաբար բնակվող հայերը բնաջնջվեցին 1915—20-ին:

*Թ. Հակոբյան*

**ՄԻՋԱԴԵՊ**, էպիզոդ (հուն. ἐπεισόδιον — բառացի՝ դիպված, միջարկ, պատահար), գեղարվեստական երկի մեջ պատկերված համեմատաբար ավարտուն որևէ իրադարձություն: Մ., լինելով *սյուժեի* օղակներից մեկը, կապվում է երկի մյուս բաղադրամասերի հետ, ստեղծում գեղարվեստական միաձույլ ամբողջություն (Թագուհուն փրկելու պատմությունը Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպում):

**ՄԻՋԱԴԻՐ ՋԱՆԳՎԱԾ**, երկրակեղևի գեոսինկլինալային մարզերում հանդիպող կոշտ բազմանկյուն սալաբեկոր. հիմքը կազմված է հին (հնագույն) մետամորֆիզմի ենթարկված և մագմատիկ զանգվածներով հատված ապարներից, իսկ վերնահարկը՝ աններդաշնակ տեղադրված, համեմատաբար թույլ ծալքավորված նստվածքային կամ հրաբխանստվածքային շերտերից: Մ. զ-ները շրջափակվում են երիտասարդ հասակի ծալքավոր ստրուկտուրաներով և խզման գոտիներով: Մ. զ-ների սահմաններում հաճախ առկա են *գրաբենների*, *ռիֆտերի* բնույթի երիտասարդ իջվածքներ, որոնք լցված են այս կամ այն չափով ծալքավորված նստվածքներով:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆ (ՄԱՄ)**, աշխարհագրագետների միջազգային գիտական միավորում: Հիմնադրվել է 1922-ին: Միավորում է 74 երկիր (1975): Մտնում է Գիտական միությունների միջազգային խորհրդի կազմի մեջ: ՍՍՀՄ ՄԱՄ-ի անդամ է 1956-ից: ՄԱՄ-ը կոչված է օգնելու աշխարհագրական գիտական պրոբլեմների ուսումնասիրությանը, միջազգային համագործակցություն պահանջող հարցերի գիտական քննարկմանը և հրատարակությանը: Անց է կացնում միջազգային աշխարհագրական կոնգրեսներ (23-րդը՝ Մոսկվայում, 1976-ին), ռեգիոնալ կոնֆերանսներ, հիմնադրում հանձնաժողովներ (կոնգրեսների միջև ընկած ժամանակամիջոցում միության հարցերը լուծելու համար): ՄԱՄ-ի գործունեությունը ղեկավարում է Գլխավոր ասամբլեայի կողմից ընտրված Գործադիր կոմիտեն: ՄԱՄ-ին միացած են Միջազգային քարտեզագրական և չորրորդական ժամանակաշրջանի նստվածքներն ուսումնասիրող ասոցիացիաները (ՄՔԱ): ՄԱՄ-ի բյուլետեններում տպագրվում են կոնգրեսների և կոնֆերանսների հաշվետվությունները և ՄՔԱ աշխատանքների մասին նյութեր: 1976-ին (Մոսկովյան կոնգրես) ՄԱՄ-ի ազգային ատլասների հանձնաժողովի և քարտեզագրական սիմպոզիումների նիստերը տեղի ունեցան Երևանում: *Ա. Բաղդասարյան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԱՌԵՎՏՐԱԿԱՆ ՊԱԼԱՏ**, ՄԱՊ (International Chamber of Comerce, ICC), կապիտալիստական երկրների (1978-ին՝ 87) գործարար շրջանների ու միավորումների ֆեդերացիա: Հիմնադրըվել է 1919-ին: Պաշտոնապես կոչված է նպաստելու տարբեր երկրների միջև առևտրի պայմանների բարելավմանը, միջազգային տնտ. պրոբլեմների լուծմանը և, այդպիսով, աջակցելու խաղաղության ու ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը: Սակայն ի սկզբանե եղել է մասնավոր ձեռնարկատիրության ու դրա «առավելությունների» ջատագով: ՄԱՊ-ի մարմիններն են՝ կոնգրեսը (գումարվում է երկու տարին մեկ), խորհուրդը (կազմվում է յուրաքանչյուր անդամ-երկրի 2—6 պատգամավորից), գործադիր կոմիտեն, գլխավոր քարտուղարությունը (նստավայրը՝ Փարիզ), ազգային կոմիտեները: ՍՍՀՄ-ի, նաև Բուլղարիայի, ԳԴՀ-ի Լեհաստանի, Հունգարիայի, Չեխոսլովակիայի ու Ռումինիայի առևտրաարդյունաբերական պալատների ներկայացուցիչները որպես դիտորդներ ներկա են լինում ՄԱՊ-ի կոնգրեսներին և մասնակցում սոցիալիստական երկրների առևտրական պալատների հետ ՄԱՊ-ի կապերի հատուկ Կոմիտեի աշխատանքներին:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԱՍՏՂԱԳԻՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆ (ՄԱՄ)** (International Astronomical Union, IAU), աստղագիտության բնագավառում տարվող հետազոտություններին օժանդակող ու դրանք կոորդինացնող միջազգային գիտական ընկերություն: Հիմնվել է 1919-ին, միավորում է մոտ 50 երկրի աստղագետների: ՍՍՀՄ-ը ՄԱՄ-ի անդամ է 1935-ից: ՄԱՄ-ը մտնում է *Միջազգային խորհուրդ գիտական միությունների* կազմակերպության մեջ և ներկայացնում է աստղագիտությունը միջազգային այլ կազմակերպություններում: Իր կազմում ունի աստղագիտության տարբեր պրոբլեմների գծով շուրջ 40 մասնագիտական հանձնաժողով: ՄԱՄ-ի աշխատանքային մարմինը գործադիր կոմիտեն է: Երեք տարին մեկ, անդամ-երկրներից մեկում տեղի է ունենում ՄԱՄ-ի գլխավոր ասամբլեա (1958-ին՝ Մոսկվայում), որի պլենար և հանձնաժողովների նիստերում լսվում են աստղագիտության արդիական հարցերին վերաբերող զեկուցումներ, հաստատվում նախորդ ասամբլեայից հետո ընկած ժամանակաշրջանում կատարված հետազոտությունների գիտական հաշվետվություններ, մշակվում նոր հետազոտությունների ծրագրեր, քննարկվում ՄԱՄ-ի գործունեության հետ կապված իրավաբանական և ֆինանսական հարցեր, ընտրվում է Գործադիր կոմիտեի նոր կազմ: ՄԱՄ-ը և նրա հանձնաժողովները պարբերաբար կազմակերպում են աստղագիտության կարևոր պրոբլեմներին նվիրված միջազգային գիտաժողովներ և կոլոքվիումներ: «Անկայուն երևույթները գալակտիկաներում» պրոբլեմին վերաբերող գիտաժողովը կայացել է Բյուրականի աստղադիտարանում (1966): Սովետական, այդ թվում հայ առաջատար աստղագետները ՄԱՄ-ի և նրա մասնագիտական հանձնաժողովների անդամներ են, Վ. Հ. *Համբարձումյանն* ընտրըվել է այդ միության փոխպրեզիդենտ (1948—1955) և պրեզիդենտ (1961—64): Այդ կապակցությամբ ՄԱՄ-ի գործկոմի ամենամյա նստաշրջանը հրավիրվել է Երևանում (1962): ՄԱՄ-ը հրապարակում է «IUA Cirkular», «IAU Information Bulletin» տեղեկագրերը և գլխավոր ասամբլեաների, գիտաժողովների ու կոլոքվիումների աշխատությունները: *Լ. Միրզոյան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԱՐԴԱՐԱԴԱՏՈՒԹՅԱՆ ՄՇՏԱԿԱՆ ՊԱԼԱՏ**, *Ազգերի լիգային* առընթեր միջազգային դատական մարմին: Գործել է Հաագայում՝ 1921—40-ին, ձևականորեն լուծարվել 1946-ին: Ըստ Ազգերի լիգայի ստատուտի, ստեղծվել էր միջազգային վեճերի դատական լուծումը Ազգերի լիգայում կենտրոնացնելու նպատակով: Իրականում զբաղվում էր Ազգերի լիգայում իշխող տերությունների շահերի պաշտպանությամբ: Իրավասու էր քննել միջպետական այն վեճերը, որոնք վիճող կողմերը կամավորաբար հանձնում էին Պալատին, ինչպես նաև այն վեճերը, որոնք նախատեսվում էր հանձնել Պալատին միջազգային պայմանագրերով: ՍՍՀՄ-ը Մ. ա. մ. պ-ի ստատուտի վերաբերյալ համաձայնագրի մասնակից չէր: *Ա. Եսայան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԱՐԺԵՔ**, համաշխարհային տնտեսության մեջ ապրանքի արտադրության վրա կատարվող աշխատանքի հասարակայնորեն անհրաժեշտ ծախսեր: Յուրաքանչյուր երկիր ունի աշխատանքի արտադրողականության և լարունության ազգային որոշակի մակարդակ, հետևաբար նաև տվյալ ապրանքի արտադրության վրա կատարվող աշխատանքի հասարակայնորեն անհրաժեշտ ծախսերի որոշակի մեծություն, որով որոշվում է դրա ազգային *արժեքը*: Համաշխարհային շուկայում ապրանքների փոխանակությունը կատարվում է ոչ թե աշխատանքի ազգային, այլ հասարակայնորեն անհրաժեշտ համաշխարհային միջին ծախսերի՝ Մ. ա-ի (իսկ հետագայում՝ միջազգային արտադրության գնի) հիման վրա: Մ. ա. առաջանում է տարերայնորեն, աշխատանքի հասարակական զարգացած բաժանման և կապիտալիստական համաշխարհային առևտրում ընթացող մրցապայքարի հետևանքով, ապրանքների ազգային տարբեր արժեքների և արտադրության գների հիման վրա: Այն որոշվում է արտադրության համաշխարհային հասարակայնորեն նորմալ պայմաններում ապրանքների արտադրության համար պահանջվող հասարակայնորեն անհրաժեշտ աշխատաժամանակով: Վերջինը կախված է աշխատանքի համաշխարհային միջին լարունության մակարդակից, որը չափվում է աշխարհում աշխատանքի միջին միավորով, և աշխատանքի համաշխարհային միջին արտադրողականությունից, որը ազգային մակարդակների միջինն է: Հասարակայնորեն անհրաժեշտ համաշխարհային միջին աշխատաժամանակի կազմավորման հիմքը հիմնականում խոշոր մատակարար-երկրում տվյալ ապրանքի արտադրության պայմաններն են: Տնտ. առավել սերտ կապեր ունեցող երկրների միջև կատարվող փոխանակության մեջ մեծ դեր խաղացող ապրանքատեսակների համար կարող է ձևավորվել ռեգիոնալ արժեք, որը Մ. ա-ի մի տեսակն է:

Համաշխարհային տնտեսության սոցիալիստական համակարգում առաջացող Մ. ա-ով կարգավորվում են *համաշխարհային սոցիալիստական շուկայի* գները: Քանի որ սոցիալիստական երկրներն առևտուր են կատարում նաև կապիտալիստական երկրների հետ, ուստի համաշխարհային սոցիալիստական շուկայի գները սահմանվում են հաշվի առնելով նաև ամբողջ համաշխարհային էկոնոմիկայում,

այդ թվում համաշխարհային տնտեսության կապիտալիստական համակարգում կազմավորվող Մ. ա.: Բայց համաշխարհային տնտեսության սոցիալիստական համակարգում արժեքի օրենքի գործողությունը հաշվի է առնվում պլանաչափ կարգով, իսկ ազգային արտադրությունն ունի այնպիսի ռացիոնալ կառուցվածք, որ համաշխարհային շուկայում իրենց ապրանքներն իրացնելով Մ. ա-ով կարգավորվող գներով, սոցիալիստական երկրները տնտ. օգուտ են ստանում:

*Գրկ.* տես *Միջազգային գին* հոդվածի գրականությունը: *Վ. Ներկարարյան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ**, բանվոր դասակարգի պայքարը կապիտալիզմը տապալելու և կոմունիստական հասարակարգ ստեղծելու, իր ամենօրյա տնտեսական, քաղաքական ու մշակութային շահերի, աշխատավորների ընդհանուր դեմոկրատական իրավունքների ու ազատությունների համար: «Ի՞նչ անել» գրքում Վ. Ի. Լենինը նշել է բանվոր դասակարգի շարժման չորս ձև՝ տնտ., քաղ., գաղափարական և տեսական: Դրանցից առավել կարևորը քաղ. շարժումն է, որը միայն կարող է հասցնել բանվոր դասակարգի լիակատար տնտ. ու սոցիալական ազատագրմանը կապիտալի լծից, նրա կողմից պետ. իշխանության նվաճման, իր դիկտատուրայի հաստատման, առանց որի անկարելի է բանվորական շարժման վերջնական նպատակի՝ կոմունիստական հասարակարգի կառուցման իրականացումը:

Մ. բ. շ. ընդգրկում է բանվոր դասակարգի քաղ. կուսակցությունների, արհմիությունների և այլ բանվորական կազմակերպությունների գործունեությունը: Դրանք հաճախ տարբեր, երբեմն հակադիր դիրքերից են ըմբռնում շարժման խնդիրներն ու նպատակները: Այդ ըմբռնումները հանգում են պատմականորեն ձևավորված երկու հիմնական՝ հեղափոխական և ռեֆորմիստական ուղղությունների: Հեղափոխական ուղղության կրողները մարքսիզմ-լենինիզմի գաղափարախոսությամբ առաջնորդվող կոմունիստական և բանվորական կուսակցություններն են: «Կոմունիստները մնացած պրոլետարական կուսակցություններից տարբերվում են լոկ նրանով, որ մի կողմից՝ տարբեր ազգերի պրոլետարների պայքարից առանձնացնում և պաշտպանում են ամբողջ պրոլետարիատի ընդհանուր, ազգությունից անկախ շահերը, մյուս կողմից՝ նրանով, որ զարգացման տարբեր աստիճանների վրա, որոնցով անցնում է պրոլետարիատի պայքարը բուրժուազիայի դեմ, նրանք միշտ հանդիսանում են ամբողջ շարժման շահերի ներկայացուցիչներ» (Մ ա ր ք ս Կ., Է ն գ ե լ ս Ֆ., Կոմունիստական կուսակցության մանիֆեստը, 1968, էջ 92—93): Մ. բ. շ-ման մեջ հեղափոխական ուղղությանը հակադրվում է մանրբուրժուական ռեֆորմիզմը՝ հանձինս աջ սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների և զանազան ձախ արկածախնդրական հոսանքների:

Մ. բ. շ. ծնունդ է առել XIX դ. 30—40-ական թթ., երբ բանվոր դասակարգը դարձավ ինքնուրույն քաղ. ուժ և սկսեց պայքարել բուրժուազիայի դեմ հանուն իր սեփական-դասակարգային շահերի (*Լիոնի ապստամբություններ 1831*, *1834*, Սիլեզիայի ջուլհակների 1844-ի ապստամբություն, *չարտիզմ*): Ըստ էության դրանք պրոլետարիատի առաջին քաղ. ելույթներն էին, հատկապես մեծ էր չարտիզմի դերը, որը դարձավ «...առաջին լայն, իսկապես մասսայական, քաղաքականապես ձևավորված, պրոլետարական-հեղափոխական շարժումը...» (Լ ե ն ի ն Վ. Ի., Երկ., հ. 29, էջ 373): Դրանք այն պատմական պայմաններն ու իրադարձություններն էին, որոնց հիման վրա ծագեց մարքսիզմը: Այդ ժամանակից սկսած դասակարգային պայքարը պրոլետարիատի և բուրժուազիայի միջև դարձավ մարդկային հասարակության զարգացման պատմական պրոցեսի հիմնական բովանդակությունը: Գիտական սոցիալիզմի հիմնադիրներ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը «*Կոմունիստական կուսակցության մանիֆեստում*» տեսականորեն ընդհանրացնելով բանվորական շարժման նախորդ փորձը՝ բանվոր դասակարգին բնութագրեցին որպես կապիտալիզմի գերեզմանափորի, որին վիճակված է իրագործել կապիտալիզմը կործանելու և անդասակարգ կոմունիստական հասարակարգ կառուցելու պատմական առաքելությունը, գիտականորեն հիմնավորեցին *պրոլետարական ինտերնացիոնալիզմի* սկզբունքը:

Մ. բ. շ-ման զարգացման և ամրապնդման համար կարևոր փուլ հանդիսացան 1848—49-ի հեղափոխությունները Եվրոպայում և հատկապես 1848-ի հունիսյան ապստամբությունը Փարիզում՝ ուր «...պրոլետարիատի և բուրժուազիայի միջև բռնկվեց առաջին մեծ քաղաքացիական պատերազմը» (Լ ե ն ի ն Վ. Ի., Երկ., հ. 29, էջ 373): 1848—49-ի հեղափոխությունից հետո արդ. հեղաշրջումը, որ XVIII դ. 60-ական թթ. սկսվել էր Անգլիայում, XVIII դ. վերջին՝ Ֆրանսիայում, XIX դ. 2-րդ տասնամյակում՝ ԱՄՆ-ում, լրիվ ծավալով տարածվեց Գերմանիայում և Ավստրիայում: Աճեց պրոլետարիատի թվաքանակը. որ կենտրոնացել էր արդ. խոշոր կենտրոններում: Ետհեղափոխական շրջանում, XIX դ. 50—60-ական թթ. տեղի ունեցած մի շարք պատմական իրադարձություններ՝ 1959-ին Լոնդոնի շինարարների գործադուլը, որը պաշտպանեցին Ֆրանսիայի, Շվեյցարիայի և մի քանի այլ երկրների բանվորները, անգլ. և ֆրանս. բանվորների ելույթները՝ ընդդեմ ԱՄՆ-ում 1861—65-ի քաղաքացիական պատերազմին Մեծ Բրիտանիայի միջամտության, ինչպես նաև ի պաշտպանություն լեհ ժողովրդի ազատագրական պայքարի, ապացուցեցին, որ եվրոպական պրոլետարիատը գիտակցում է իր խնդիրների ինտերնացիոնալ բնույթը: «Կոմունիստական կուսակցության մանիֆեստում» առաջադրված «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» լոզունգը դառնում էր գործելակերպ ոչ միայն այն ժամանակ, երբ բանվոր դասակարգը պայքարի էր ելնում իր անմիջական շահերի պաշտպանության համար, այլ նաև այն դեպքերում, երբ նա միջամուխ էր լինում այս կամ այն պատմական իրադարձությանը, արտահայտելով իր դասակարգային դիրքորոշումը: Այս պայմաններում անհրաժեշտ դարձավ Մ. բ. շ-ման ազգային ջոկատների գործողությունները միավորող միջազգային կազմակերպության ստեղծումը: 1864-ին Մարքսի և Էնգելսի ղեկավարությամբ ստեղծվեց I Ինտերնացիոնալը՝ բանվորների միջազգային ընկերակցությունը (տես *Ինտերնացիոնալ I*): Այն վիթխարի գործ կատարեց միջազգային բանվորական շարժմանը գիտական կոմունիզմի ուսմունքը ներարկելու, մանրբուրժուական ազդեցությունից, գիտական կոմունիզմին անհարիր անարխիստական հոսանքներից՝ պրուդոնիզմից, բակունիզմից, նաև լասսալականությունից ու տրեդյունիոնիզմից ձերբազատելու համար: Մ. բ. շ-ման զարգացման գագաթնակետը մինչմոնոպոլիստական կապիտալիզմի ժամանակաշրջանում եղավ Փարիզի կոմունան (տես *Փարիզի կոմունա 1871*), որը պրոլետարիատի կողմից բուրժ. պետ. մեքենան փշրելու և այն պրոլետարիատի դիկտատուրայով փոխարինելու առաջին փորձն էր:

Մինչմոնոպոլիստական կապիտալիզմը իմպերիալիզմի վերաճելու շրջանում (1871—1917) Մ. բ. շ. զգալիորեն ընդլայնվեց ու խորացավ: Արտադրության համակենտրոնացման շնորհիվ տեղի ունեցավ պրոլետարիատի թվական աճ ու համակենտրոնացում խոշոր ձեռնարկություններում, որը նպաստեց բանվոր դասակարգի համախմբմանը և նրա շարժման կազմակերպվածության ու հզորության աճին: XIX դ. վերջին քառորդում պրոլետարիատի քաղ. կուսակցություններ ստեղծվեցին Գերմանիայում, ԱՄՆ-ում, Ֆրանսիայում, Անգլիայում, Ավստրիայում: 1883-ին Գ. Վ. Պլեխանովը Ժնևում կազմակերպեց «*Աշխատանքի ազատագրություն*» *խումբը*, որը կարևոր դեր կատարեց Ռուսաստանում մարքսիզմի տարածման գործում: Անհրաժեշտ դարձավ միջազգային բանվորական շարժումը միավորող նոր կենտրոնի ստեղծումը՝ 1876-ին արձակված I Ինտերնացիոնալի փոխարեն: Ֆ. Էնգելսի գործուն մասնակցությամբ 1889-ին ստեղծվեց II Ինտերնացիոնալը (տես *Ինտերնացիոնալ II*): XIX դ. 90-ական թթ. բանվորական նոր կուսակցություններ կազմավորվեցին Եվրոպայում և Ամերիկայում: 1898-ին տեղի ունեցավ ՌՍԴԲԿ I համագումարը:

Մ. բ. շ-ման զարգացման երկրորդ փուլում տեղի ունեցած որակական մեծ տեղաշարժերը կապված են Վ. Ի. Լենինի հեղափոխական գործունեության հետ: XIX դ. վերջին հեղափոխական պայքարի կենտրոնը Արևմտյան Եվրոպայից տեղափոխվեց Ռուսաստան, որի շնորհիվ Ռուսաստանի պրոլետարիատը դարձավ Մ. բ. շ-ման ավանգարդը: Այդ ավանգարդի քաղ. համախմբումը մարքսիզմի հեղափոխական դրոշի ներքո դարձավ հույժ կարևոր խնդիր, առավել ևս այն պատճառով, որ XIX դ. վերջին և XX դ. սկզբին բանվորական շարժման ներսում սրվեց պայքարը հեղափոխական և օպորտունիստական հոսանքների միջև: Օպորտունիզմն իր արտահայտությունը գտավ մարքսիզմի ուսմունքը վերանայելու (տես *Ռևիզիոնիզմ*) և, ըստ էության, նրանից հեղա-

փոխական ոգին վանելու պահանջների մեջ: Ռուսաստանում օպորտունիզմն ունեցավ իր տարատեսակը, որը բանվոր դասակարգի համար առավել կարևորը համարում էր պայքարը տնտ. խնդիրների համար (տես «*Էկոնոմիզմ*»): Մահացու քննադատության ենթարկելով «էկոնոմիզմը» և միջազգային ռևիզիոնիզմն առհասարակ, Վ. Ի. Լենինը գիտականորեն ապացուցեց, որ այն հետևանք է գերշահույթի հաշվին բանվոր դասակարգի վերնախավին կաշառելու և բանվորական արիստոկրատիայի առաջացման, որին անգլ. բուրժուազիան հասել էր ավելի վաղ՝ գաղութատիրական մենաշնորհի, իսկ մյուս կապիտալիստական երկրները ավելի ուշ՝ մոնոպոլիստական կապիտալի հաստատման շնորհիվ: Վ.Ի. Լենինը եռանդուն գործունեություն ծավալեց Ռուսաստանում օպորտունիզմից զերծ հեղափոխական մարքսիստական կուսակցություն ստեղծելու համար: ՌՍԴԲԿ II համագումարում (1903) հստակորեն սահմանազատվեցին հեղափոխական (բոլշևիկներ) և օպորտունիստական (մենշևիկներ) թևերը: *Բոլշևիզմը* հետևողականորեն մերժում էր ինչպես աջ օպորտունիզմը, այնպես էլ ձախ աղանդավորականության ու մանրբուրժուական արկածախնդրությունը: Բոլշևիկները անզիջում պայքար մղեցին նաև միջազգային բանվորական շարժման մեջ *ցենտրիզմի*, որի առաջացումը կապված է Կ. *Կաուցկու* անվան հետ, տրեդյունիոնիզմի և անարխո-սինդիկալիզմի դեմ ևս: 1905—07-ի բուրժուա-դեմոկրատական հեղափոխության տարիներին Վ. Ի. Լենինը մշակեց դեմոկրատական հեղափոխության մեջ բանվոր դասակարգի հեգեմոնիայի, բանվոր դասակարգի և գյուղացիության հեղափոխական-դեմոկրատական դիկտատուրայի, բուրժ. հեղափոխությունը սոցիալիստականի վերաճելու մասին իր նշանավոր դրույթները, որոնք այսօր էլ ելակետային նշանակություն ունեն Մ. բ. շ-ման համար:

Իմպերիալիստական տերությունների միջև աշխարհի վերաբաժանման համար հակամարտության սրման պատճառով XX դ. սկզբին առանձնահատուկ կարևորություն ստացավ բանվոր դասակարգի պայքարն ընդդեմ պատերազմի վտանգի: Մ. բ. շ-ման հակապատերազմական դիրքորոշումն իր արտահայտությունը գտավ II Ինտերնացիոնալի Շտուտգարտի (1907), Կոպենհագենի (1910) կոնգրեսների բանաձևերում և Բազելի (1912) կոնգրեսի մանիֆեստում: Առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմում (1914—18), սակայն, միայն բոլշևիկյան կուսակցությունը մնաց հավատարիմ Մ. բ. շ-ման ինտերնացիոնալիստական սկզբունքներին և Բազելի մանիֆեստի ոգուն: II Ինտերնացիոնալի պարագլուխները անցան բուրժուազիայի կողմը՝ զորավիգ կանգնելով «Հայրենիքի պաշտպանության» լոզունգին և պառլամենտներում քվեարկեցին ռազմ. հատկացումների օգտին: Այսպես օպորտունիզմը վերաճեց սոցիալ-շովինիզմի: II Ինտերնացիոնալը, փաստորեն, դադարեց գոյություն ունենալուց: Արդեն այդ ժամանակ Վ. Ի. Լենինը առաջ քաշեց III Ինտերնացիոնալ ստեղծելու խնդիրը և ձեռնամուխ եղավ Մ. բ. շ-ման ինտերնացիոնալիզմին հավատարիմ ուժերի համախմբմանը *Ցիմերվալդյան ձախի* մեջ: Պատերազմը միայն ժամանակավորապես ընդհատեց բանվորական շարժման նոր վերելքը: 1915-ից սկսած պրոլետարիատի ելույթները նորից ծավալվեցին՝ 1917-ին հասցնելով *Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության* հաղթանակին Ռուսաստանում, որը համաշխարհային մասշտաբով կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանի սկիզբը դրեց: Աշխարհը տրոհվեց երկու հակադիր սոցիալ-քաղաքական սիստեմների, կապիտալիզմը դադարեց համապարփակ համաշխարհային տնտ. սիստեմ լինելուց: Դա Մ. բ. շ-ման մեջ հեղափոխական հոսանքի մեծագույն հաղթանակն էր և օպորտունիզմի լուրջ պարտությունը: Հոկտեմբերյան հեղափոխության ազդեցությամբ հեղափոխություններ բռնկվեցին Ֆինլանդիայում (1918-ի հունվար), Գերմանիայում (1918-ի նոյեմբեր), ծնվեցին Բավարական և Հունգարական Սովետական Հանրապետությունները (1919-ի գարուն և ամառ), որոնք սակայն, պարտություն կրեցին աջ ս-դ. դավաճանության պատճառով:

Ռուսաստանում պրոլետարական հեղափոխության հաղթանակից հետո կոմունիստական կուսակցություններ ստեղծվեցին Գերմանիայում, Հունգարիայում, Լեհաստանում և այլ երկրներում: 1919-ի մարտին Մոսկվայում տեղի ունեցավ *III Կոմունիստական ինտերնացիոնալի* հիմնադիր կոնգրեսը: Մ. բ. շ-ման զգալի ջոկատներ բուրժ. դեմոկրատիայի և պրոլետարիատի դիկտատուրայի հարցերում ընդունեցին բոլշևիկյան կուսակցության առաջադրած պլատֆորմը: Ետհոկտեմբերյան տարիներին բանվորական շարժման վերելքի և կոմունիստական կուսակցությունների ձևավորման կապակցությամբ առաջ եկավ բոլշևիկյան կուսակցության փորձը երիտասարդ կոմկուսներին հաղորդելու անհրաժեշտության հարցը: Եվ այդ գործում իրենց դերը կատարեցին Վ. Ի. Լենինի «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» աշխատությունը և Կոմինտերնի II (1920) ու III (1921) կոնգրեսները: Բայց չնայած ետհոկտեմբերյան առաջին տարիների հեղափոխական վերելքին՝ Մ. բ. շ. մնում էր պառակտված: 1922-ին, Կոմինտերնից բացի, որը միավորում էր 60 կուսակցություն և կազմակերպություն, Եվրոպայում գործում էին նաև օպորտունիստական Բեռնի ինտերնացիոնալը (1919) և ցենտրիստական «*Ինտերնացիոնալ* $2\frac{1}{2}$»-ը (1921): Արհմիութենական շարժումը նույնպես պառակտված էր: Մ. բ. շ-ման ետհոկտեմբերյան վերելքի վերջին պոռթկումները եղան պրոլետարիատի հաջողության չհասած ելույթները 1923-ին Գերմանիայում, Բուլղարիայում և Լեհաստանում: 1924-ից կապիտալիզմը թևակոխեց իր մասնակի կայունացման ժամանակաշրջանը, որը տևեց մինչև 1929-ը:

1929—33-ի համաշխարհային տնտ. ճգնաժամի հետևանքով սկսվեց Մ. բ. շ-ման նոր վերելքը, որը սրեց կապիտալիզմի բոլոր հակասությունները: Բանվորական շարժումը խթանող և հեղափոխականացնող գործոններից մեկն այն էր, որ կապիտալիստական բոլոր երկրներում արտադրության աննախադեպ անկման, գործազրկության աճի և արտադրողական ուժերի փոշիացման ֆոնի վրա Սովետական Միությունում հաջողությամբ իրագործվում էր առաջին հնգամյա պլանը (տես *Հնգամյա պլաններ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման*), տեղի էր ունենում տնտ. բուռն աճ, երկրի ինդուստրացում: Սարսափած բանվորական շարժման վերելքից, մոնոպոլիստական բուրժուազիան գերադասեց մի կողմ նետել բուրժ. կեղծ դեմոկրատիզմի քողը և դիմել ֆաշիստական բռնատիրության հաստատման: 1933-ին Գերմանիայում իշխանությունը զավթեցին նացիոնալ-սոցիալիստները: Ֆաշիզմի վտանգը կախվեց կապիտալիստական Եվրոպայի մյուս երկրների վրա: 1930-ական թթ. ստեղծված իրադրությունը բանվոր դասակարգից պահանջում էր իր շուրջը համախմբել բոլոր առաջադիմական ուժերին՝ դեմոկրատական ազատությունները, աշխատավորների սոցիալ-տնտեսական նվաճումները պաշտպանելու և նոր համաշխարհային պատերազմը կանխելու համար: Անհրաժեշտ էր հասնել բանվորական շարժման միասնության: Այս խնդիրներն էլ քննարկվեցին Կոմինտերնի VII կոնգրեսում (1935): Դեռ 1934-ին հաջողվեց հասնել կոմունիստների և սոցիալիստների գործողությունների միասնության Ֆրանսիայում, Իտալիայում, Իսպանիայում, Հունաստանում, Ավստրիայում: Ելնելով այդ փորձից, Կոմինտերնի VII կոնգրեսը առաջադրեց *ժողովրդական ճակատի* տակտիկան: 1934—37-ի բանվորական շարժման վերելքի ժամանակ Ֆրանսիայում կազմակերպվեց ժող. ճակատ (1935) և նրանում միավորված կոմունիստների ու սոցիալիստների միասնական գործողությունների շնորհիվ հնարավոր դարձավ կանխել ֆաշիզմի հաղթանակը Ֆրանսիայում: 1936-ի սկզբին ժող. ճակատ կազմակերպվեց Իսպանիայում, սակայն 1936—39-ի քաղաքացիական պատերազմում իսպ. բանվոր դասակարգը և հանրապետական ուժերը պարտություն կրեցին, և գերմանա-իտալական ֆաշիզմի օգնությամբ Իսպանիայում հաստատվեց գեներալ Ֆրանկոյի բռնատիրական վարչակարգը: Իսպ. հեղափոխության պարտությունը ամրապնդեց ֆաշիզմի դիրքերը և նպաստեց երկրորդ համաշխարհային պատերազմի սանձազերծմանը (1939-ի սեպտեմբեր): Պատերազմը նոր խնդիրներ դրեց Մ. բ. շ-ման առջև: Այն չափով, ինչ չափով պատերազմը սկսեց դառնալ հակաֆաշիստական, ազատագրական և հատկապես հիտլերյան Գերմանիայի՝ ՍՍՀՄ-ի վրա կատարած ուխտադրուժ հարձակումից հետո կոմունիստական կուսակցություններն սկսեցին հանդես գալ որպես *Դիմադրության շարժման* նախաձեռնողներ:

Գերմ. ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի ջախջախումը և դրանում Սովետական Միության դերը առաջ բերեցին հեղափոխական շարժման նոր ալիք: Երկ-

րորդ համաշխարհային պատերազմի ժամանակ ծավալվեց կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի 2-րդ փուլը: Կենտրոնական և Հարավ-Արևելյան Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրներում հաղթեցին ժողովրդա-դեմոկրատական հեղափոխությունները, և այդ երկրները թևակոխեցին սոցիալիստական զարգացման ուղին: Այսպիսով, սոցիալիզմը դուրս եկավ մեկ երկրի սահմաններից և դարձավ համաշխարհային սիստեմ: Դա Մ. բ. շ-ման երկրորդ խոշորագույն նվաճումն էր Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո: Ետպատերազմյան առաջին տարիները եղան ընդհանուր հեղափոխական վերելքի տարիներ: Արևմտյան Եվրոպայում գրեթե ամենուրեք կոմունիստները պառլամենտներում նվաճեցին լայն ներկայացուցչություն և մասնակցեցին նոր կազմված կառավարություններին: Սակայն արևմտա-եվրոպական բուրժուազիան ԱՄՆ-ի օգնությամբ կարողացավ բռնությամբ ընդհատել հեղափոխական պրոցեսը և անցնել հակահարձակման: Դրան նպաստեց ՍՍՀՄ-ի դեմ Արևմուտքի սկսած «սառը պատերազմը» և ս-դ. կուսակցությունների կողմից կոմկուսների հետ ունեցած դաշինքի խզումը: 1967-ի գարնանը կոմունիստները հեռացվեցին Ֆրանսիայի, Իտալիայի և Բելգիայի կառավարություններից: 1950-ական թթ. սկզբին բուրժուազիային հաջողվեց եվրոպական կառավարություններից արտամղել նաև ս-դ-ներին: 1947—49-ին Ֆրանսիայում և Իտալիայում պառակտվեցին արհմիութենական շարժման կենտրոնները: Արևմտյան Եվրոպայի և Հյուսիսային Ամերիկայի արհմիությունների մեծ մասը լքեց առաջադիմական՝ *Արհմիությունների համաշխարհային ֆեդերացիան*: 1949-ի դեկտեմբերին ռեֆորմիստական արհմիությունները ստեղծեցին *Ազատ արհմիությունների միջազգային կոնֆեդերացիան*: 1951-ին աջ սոցիալիստները հիմնադրեցին *Սոցիալիստական Ինտերնացիոնալը*:

Իմպերիալիստական բուրժուազիայի հարձակմանը Մ. բ. շ-ման հեղափոխական ջոկատները հակադրեցին գործադուլների և քաղ. ցույցերի տակտիկան: 1946—1950-ին 11 խոշոր կապիտալիստական երկրներում գործադուլ արեց մոտ 72 մլն բանվոր: 1959-ական թթ. տեղատվությունից հետո 60-ական թթ. առաջին կեսին նկատվեց գործադուլային պայքարի վերելք, այնուհետև՝ որոշ անկում: Սակայն 1967-ից սկսած պայքարը կրկին աշխուժացավ: 1968-ի մայիս—հունիսին համընդհանուր գործադուլ տեղի ունեցավ Ֆրանսիայում, երբ բանվորների ու ուսանողության բուռն ելույթները երկրում ստեղծեցին քաղ. ճգնաժամ: Այս շրջանում Մ. բ. շ-ման կարևոր առանձնահատկությունն այն էր, որ նա միահյուսվում էր երիտասարդության, հատկապես ուսանողության և ազգային փոքրամասնությունների պայքարի հետ, արտահայտելով ժող. զանգվածների ցասումն ընդդեմ պատերազմի, սպառազինությունների մրցավազքի՝ հանուն դեմոկրատական ազատությունների ու քաղաքացիական իրավունքների: Մ. բ. շ., զորավիգ լինելով ազգային-ազատագրական պայքարին Ասիայում, Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում, մեծապես նպաստեց գաղութատիրության կործանմանը, որը կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ծավալման 3-րդ փուլի կարևորագույն արդյունքն է: 1960-ական թթ. կեսից Իտալիայում, Ֆրանսիայում, Շվեդիայում, Բելգիայում և մի քանի այլ երկրներում կրկին սկսեց աճել կոմկուսների ազդեցությունը, ուժեղացավ բանվորական շարժման միասնության ձգտումը: Մ. բ. շ. ձեռք բերեց նոր դաշնակիցներ (այսպես կոչված, «նոր ձախերը»), և կոմկուսների առջև ծառացավ այդ նոր ջոկատների հետ մերձենալու, նրանց կիսաանարխիստական պատրանքներից ձերբազատելու խնդիրը: 1956—65-ին ազգային-ազատագրական շարժումը նոր հաջողություններ արձանագրեց Ասիայում, Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում: Ամերիկյան իմպերիալիզմի հովանավորած հետադիմական բռնատիրական վարչակարգերը տապալվեցին Պերուում, Կոլումբիայում, Վենեսուելայում: Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի 3-րդ փուլի կարևորագույն արդյունքը *Կուբայական հեղափոխության* հաղթանակն էր և Արևմտյան կիսագնդում, իմպերիալիզմի միջնաբերդի՝ ԱՄՆ-ի հարևանությամբ առաջին սոցիալիստական պետության առաջացումը:

Մ. բ. շ-ման կարևոր նվաճումներից էր նաև հեղափոխության հաղթանակը Չիլիում (1970—73): Սակայն լատինաամերիկյան բանվոր դասակարգը բավարար չափով ուժեղ և քաղաքականապես հասուն չգտնվեց պատշաճ ձևով դիմագրավելու ներքին հետադիմության և ամերիկյան իմպերիալիզմի հակահարձակմանը: Բանվորական և ընդհանրապես հեղափոխական շարժումը ծանր պարտություն կրեց Գվատեմալայում, Բրազիլիայում, Բոլիվիայում, Արգենտինայում: Չիլիում և Ուրուգվայում զինվորական հեղաշրջման միջոցով 1973-ին հաստատվեց ֆաշիստական դիկտատուրա: Այդուհանդերձ հեղափոխական պայքարի ալիքը Լատինական Ամերիկայում շարունակվում է: Այդ են վկայում սանդինիստական հեղափոխության հաղթանակը Նիկարագուայում (1978), ուժեղացող համաժողովրդական պայքարը Սալվադորում (1980—81) ևն: Մ. բ. շ-ման մեջ հեղափոխական հոսանքի հաջողությունն է վկայում նաև այն փաստը, որ գաղութատիրության լուծը թոթափած շատ երկրներ ընտրել են սոցիալիստական զարգացման ուղին, ընդ որում նրանց զգալի մասի (Կոնգոյի Ժողովրդական Հանրապետություն, Անգոլա, Մոզամբիկ, Եթովպիա, Աֆղանստան) կառավարող կուսակցությունները մարքսիզմ-լենինիզմը հռչակել են որպես իրենց գաղափարախոսություն: Բանվորական շարժումը «երրորդ աշխարհում», նրա քաղ. և սոցիալ-տնտեսական զարգացման ուշացածության պատճառով, առայժմ փոքրաքանակ է, թույլ, քաղաքականապես ոչ անհրաժեշտ չափով հասուն և կազմակերպված: Նրան հատուկ են ասիական և աֆրիկյան, այսպես կոչված, ավանդական հասարակության ֆիլանտրոպիստական, կրոնաբարոյական ուտոպիզմը, հաճախ նաև անարխոսինդիկալիստական միտումները: Սակայն զարգացող երկրների քաղ. և հատկապես տնտ. անկախության ամրապնդման, արտադրողական ուժերի աճի հետ մեկտեղ բանվոր դասակարգը այդ երկրներում հզորանում է՝ համալրելով Մ. բ. շ-ման շարքերը:

1974—75-ի տնտ. ճգնաժամը Մ. բ. շ-ման նոր վերելքի խթան հանդիսացավ: Տնտ. ճգնաժամը հասցրեց գործազրկության աճի և չնայած ճգնաժամից հետո դրա որոշակի նվազեցմանը, 1980-ի սկզբին գործազուրկների ընդհանուր թիվը կապիտալիստական աշխարհում հասնում էր 18 մլն մարդու: 1970-ական թթ. Մ. բ. շ. ընթանում էր միջազգային կլիմայի բարելավման, լիցքաթափման պայմաններում, որը նաև բանվոր դասակարգի հանուն խաղաղության և խաղաղ գոյակցության պայքարի արդյունքն էր: Նրա ակնառու նվաճումներից են նաև 1978-ի ապրիլյան հեղափոխությունը Պորտուգալիայում, «սև գնդապետների» վարչակարգի տապալումը Հունաստանում, Ֆրանկոյից հետո ներքին կյանքի դեմոկրատացումը Իսպանիայում:

Նեոկապիտալիստական տեսությունների հեղինակները պետական-մոնոպոլիստական կապիտալիզմին հատուկ երևույթները (արդ. առանձին ճյուղերի և ձեռնարկությունների ազգայնացում, տընտեսության պետ. հատվածի ստեղծում, արտադրության կառավարման գործում բուրժ. պետության դերի ընդլայնում, ծրագրավորում ևն) ներկայացնելով որպես կապիտալի դեմոկրատացման նշան, պնդում են, որ իբրև դասական կապիտալիզմ այլևս չկա, և իբրև արդեն իրենց սպառել են պրոլետարիատի մասին մարքսյան պատկերացումները: Վկայակոչում են զարգացած կապիտալիստական երկրներում սակավաթիվ բանվորների մասնակցությունը բաժնետիրական ընկերությունների դիվիդենտների ստացմանը (այսպես կոչված, «ժողովրդական կապիտալիզմ»), բանվորների ընդհանուր միջին պարբերականորեն բարձր կենսամակարդակը և կրթական ցենզի աճը, որը արդյունք է գիտատեխնիկական հեղափոխության: Այստեղից արվում է այն ընդհանուր հետևությունը, թե պրոլետարիատը որպես դասակարգ այլևս գոյություն չունի, որ նա ձուլվել է, այսպես կոչված, երրորդ խավի մեջ՝ *մենեջերների* (կապիտալիստական արտադրության վարձու տեխնոկրատ կառավարողների) հետ և, հետևաբար, գոյություն չունի նաև բանվորական շարժումը: Այս հակագիտական տեսակետին մարքսիզմ-լենինիզմը հակադրում է իրականության փաստերը՝ բանվորների և աշխատանքի ու կյանքի պայմաններով նրանց մոտ կանգնած ծառայողների ավելի քան 700 մլն-անոց բանակի առկայությունը: Նույնիսկ 1977-ին, այսինքն՝ 1974—1975-ի ճգնաժամից հետո, երբ Մ. բ. շ-ման առանձին վերելք չկար, գործադուլային պայքարին մասնակցել է 50 մլն բանվոր:

Բանվոր դասակարգը ամուր կերպով կանգնած է արդի դարաշրջանի՝ կապիտալիզմի աստիճանական կործանման և սոցիալիզմին անցնելու դարաշրջանի կենտրոնում, և Մ. բ. շ-ման դերը համաշխարհային պատմական զարգացման մեջ ոչ միայն չի նվազում, այլ, ընդհակառակը, գնալով

աճում է: Մ. բ. շ. եղել և մնում է համաշխարհային հեղափոխական պրոցեսի գլխավոր շարժիչ ուժերից մեկը, իսկ բանվոր դասակարգը՝ այդ պրոցեսի սոցիալական կրողը:

*Գրկ.* Մ ա ր ք ս Կ., Է ն գ ե լ ս Ֆ., Կոմունիստական կուսակցության մանիֆեստը, Ե., 1968: Մ ա ր ք ս Կ., Գոթայի ծրագրի քննադատությունը, Ե., 1955: Լ ե ն ի ն Վ. Ի., Ի՞նչ անել, Երկ. լիակտ. ժող., հ. 6: Ն ո ւ յ ն ի, Կոմունայի դասերը, նույն տեղում, հ. 16: Ն ո ւ յ ն ի, Մարքսիզմ և ռևիզիոնիզմ, նույն տեղում, հ. 17: Ն ո ւ յ ն ի, Տարաձայնությունները եվրոպական բանվորական շարժման մեջ, նույն տեղում, հ. 20: Ն ո ւ յ ն ի, Կոմունայի հիշատակին, նույն տեղում: Ն ո ւ յ ն ի, Կարլ Մարքսի ուսմունքի պատմական բախտը, նույն տեղում, հ. 23: Ն ո ւ յ ն ի, Օպորտունիզմը և II Ինտերնացիոնալի կրախը, նույն տեղում, հ. 27: Ն ո ւ յ ն ի, Պրոլետարական հեղափոխությունը և ռենեգատ Կաուցկին, Երկ., հ. 28: Ն ո ւ յ ն ի, Երրորդ Ինտերնացիոնալը և նրա տեղը պատմության մեջ, նույն տեղում, հ. 29: Ն ո ւ յ ն ի, III Ինտերնացիոնալի խնդիրների մասին, նույն տեղում: Ն ո ւ յ ն ի, «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ, նույն տեղում, հ. 31: ՍՄԿԿ ծրագիրը, Ե., 1974: Կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցություն. Մոսկվա, 1969, Ե., 1969: ՍՄԿԿ 25-րդ համագումարի նյութերը, Ե., 1976: Коммунистический Интернационал в документах, 1919—1932, М., 1933; Д и м и т р о в Г., В борьбе за единый фронт против фашизма и войны, [М.], 1939; Резолюции VII Всемирного конгресса Коммунистического Интернационала, М., 1935; Ч е р н я е в А. С., Современная социал-демократия и проблемы единства рабочего движения, М., 1964; Ф о с т е р У., История Второго Интернационала, т. 1—2, М., 1965—66; Коммунистический Интернационал. Краткий исторический очерк, М., 1969; Основные проблемы рабочего движения в развитых капиталистических странах, М., 1970; Антивоенные традиции международного рабочего движения, М., 1972; Великий Октябрь и современный мир, Прага, 1977; Коммунисты и проблемы современного молодежного движения, М., 1976; Единство рабочего класса и идеологическая борьба, М., 1979; Международное рабочее движение. Справочник, М., 1980. *Հ. Հակոբյան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԲԵՎԵՌԱՅԻՆ ՏԱՐԻ**, երկրի բևեռային մարզերի և առանձին լեռնասառցադաշտային շրջանների կոմպլեքս ուսումնասիրությունների տարի: Առաջին Մ. բ. տ-ում (1882-ի օգոստոս — 1883-ի օգոստոս) երկրաֆիզիկական, օդերևութաբանական և կենսաբանական դիտարկումներ են կատարվել հս. բևեռային մարզի 13 կետերում (Ռուսաստանում, ԱՄՆ-ում, Կանադայում, Նորվեգիայում, Ֆինլանդիայում, Գրենլանդիայում, Շպից-բերգեն և Յան Մայեն կղզիներում), ինչպես նաև հվ. բևեռային մարզում (Հոռն հրվանդանում և Հարավային Ջեորջիա կղզում): Մ. բ. տ-վա անցկացմանը մասնակցել են նաև Մեծ Բրիտանիան, Ֆրանսիան, Գերմանիան, Ավստրիան, Դանիան, Նիդերլանդներն ու Շվեդիան: Մ. բ. տ-վա դիտարկումները մեծ նշանակություն ունեցան մագնիսային վարիացիաների, բևեռափայլերի, Արկտիկայի կլիմայի, օդային հոսանքների և սառցապատումների ուսումնասիրությունների համար: Երկրորդ Մ. բ. տ. (1932-ի օգոստոս —1933-ի օգոստոս) ընդգրկեց նաև մթնոլորտի առաջին ռադիոզոնդային, ռադիոֆիզիկական, ակուստիկ, ինչպես նաև նավային («Սիբիրյակով», «Կնիպովիչ») արշավախմբերի, Կովկասի, Պամիրի ու Ալպյան սառցադաշտերի դիտարկումները: Երկրորդ Մ. բ. տ-վա ընթացքում Անտարկտիկայում ձմեռեց Ռ. Բերդի արշավախումբը: 1957—1958-ին բևեռային հետազոտությունները շարունակվել են «Միջազգային երկրաֆիզիկական տարվա» շրջանակներում:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԳԵՏԵՐ**, երկու կամ ավելի պետությունների տերիտորիայով հոսող կամ սահման հանդիսացող (տես *Սահմանային գետեր*) նավարկելի գետեր: Մ. գ. են Դանուբը, Հռենոսը, Կոնգոն, Նիգերը, Ամազոնը, Լա Պլատան, Մեկոնգը են: Մ. գ-ով նավարկելու ազատությունն ազդարարվել է 1814—15-ի Վիեննայի կոնգրեսում, առանձին գետերի իրավական ռեժիմը՝ Քյուչուկկայնարջիի հաշտության պայմանագրում (1774), Փարիզի հաշտության պայմանագրում (1856), Բեռլինի կոնֆերանսում (1884—85), Բելգրադի կոնվենցիայում (1948) են: Մ. գ-ի այն մասը, որն անցնում է համապատասխան պետության տերիտորիայով, ենթարկվում է նրա իրավասությանը: Օտարերկրյա առևտրական նավերի անցման կարգը լուծվում է այդ պետությունների համատեղ համաձայնագրով, իսկ առավել կարևոր Մ. գ-ի իրավական ռեժիմը՝ առափնյա բոլոր պետությունների միջև կնքված համաձայնագրով (օրինակ, Դանուբի ռեժիմը): Մ. գ. տնտ. և այլ նպատակներով օգտագործելու հարցերը, որպես կանոն, կարգավորվում են առափնյա պետությունների միջև կնքված համաձայնագրերով: Նման համաձայնագրեր ՍՍՀՄ-ը կնքել է Նորվեգիայի, Ֆինլանդիայի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Թուրքիայի, Իրանի և այլ երկրների հետ: *Ա. Եսայան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԳԻՆ**, հ ա մ ա շ խ ա ր հ ա յ ի ն գ ի ն, միջազգային արտադրության գնի փոխյին արտահայտություն, կազմավորվում է համաշխարհային շուկայում: Համաշխարհային զարգացած առևտրի պայմաններում միջազգային մասշտաբով ձևավորվում են ապրանքների շուկայական արժեքներն ու գները: Համաշխարհային շուկայում մրցապայքարի հետևանքով ազգային տարբեր արժեքների և արտադրության գների հիման վրա տարերայնորեն առաջացնում է *միջազգային արժեք*, իսկ հետագայում՝ միջազգային արտադրության գին և դրան համապատասխան Մ. գ.: Կապիտալի միջազգային շարժումը և պայքարը վաճառահանման շուկաների համար, միջազգային մասշտաբով հավասարեցնում են շահույթների նորմաները և առաջացնում *արտադրության գին*, որը գլխավորապես որոշվում է ապրանքների հիմնական զանգվածն արտահանող երկրում կամ երկրներում դրանց արտադրության պայմաններով: Պահանջարկի և առաջարկի հարաբերակցության փոփոխության ազդեցությամբ Մ. գ-երը տատանվում են միջազգային արտադրության գների շուրջը: Ժամանակակից կապիտալիզմին բնորոշ է նույն ապրանքի Մ. գ-երի բազմազանությունը, որը պայմանավորված է ըստ շուկաների և գնորդների կատեգորիաների մոնոպոլիաների վարած տարբերացված քաղաքականությամբ, առևտրական գործառնությունների բնույթով, մասնակիցների փոխհարաբերություններով, վճարման արժույթով, պետական-մոնոպոլիստական միջոցառումներով են:

Ապրանքային շուկաների կոնկրետ պայմաններից կախված, միջազգային են համարվում պատրաստի արտադրանքի (մեքենաների և սարքավորման) հիմնական արտահանող-երկրների արտահանման, զարգացող երկրներից արտահանվող հումքի, արևմտաեվրոպական խոշոր շուկաների ներմուծման, կապիտալիստական երկրների համաշխարհային նշանակություն ունեցող բորսաներում, աճուրդային շուկաներում և միջազգային առևտրի այլ խոշոր կենտրոններում առաջացող գները են: Մ. գ-երը պայմանավորված են համաձայնությունների բնույթով: Զարգացած կապիտալիստական երկրներում ներքին գներն ավելի բարձր են, քան Մ. գ-երը, զարգացող երկրներում՝ որոշ արդյունքների արտադրության մեջ նրանց միակողմանի մասնագիտացման հետևանքով, ներքին գները կարող են ցածր լինել Մ. գ-երից: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո միջազգային առևտրում կազմավորվել են Մ. գ-ի նոր տեսակներ՝ սովորական առևտրական գործարքների, քլիրինգային համաձայնագրերի, «օգնության» ծրագրերի, ներկորպորացիոն գործառնությունների իրականացման են:

*Համաշխարհային սոցիալիստական շուկայում* գները սահմանվում են հաշվի առնելով Մ. գ-երը, որոնցով նաև կատարվում է առևտուրը սոցիալիստական և կապիտալիստական երկրների միջև: Այդ գները, համապատասխան ճշգրտումից հետո, հիմք են ընդունվում սոցիալիստական երկրների միջև կատարվող առևտրում՝ գների ձևավորման ժամանակ: Հաշվի են առնվում նաև մի շարք ապրանքների արտադրության ծախսերը և սոցիալիզմի համաշխարհային համակարգում իրացման առանձնահատկությունները:

*Գրկ.* Մ ա ր ք ս Կ., Կապիտալ, հ. 3, մաս 1, Ե., 1947: Է ն գ ե լ ս Ֆ., Արժեքի օրենք և շահույթի նորմա, նույն տեղում, մաս 2, Ե., 1949: Т а р н о в с к и й О. И., М и т р о ф а н о в а Н. М., Стоимость и цена на мировом социалистическом рынке, М., 1968; Ш и л ь д к р у т В. А., Современный капитализм; проблемы цен, М., 1972; К о з л о в а К. Б., Э н т о в Р. М., Теория цены, М., 1972. *Վ. Ներկարարյան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴԱՏԱՐԱՆ ՄԱԿ**-ի, *Միավորված ազգերի կազմակերպության* գլխավոր դատական մարմինը. հիմնադրվել է 1945-ին: Որքանով դատարանի ստատուտը ՄԱԿ-ի կանոնադրության անկապտելի մասն է, ՄԱԿ-ի բոլոր անդամները միաժամանակ համարվում են դատարանի ստատուտի մասնակից: ՄԱԿ-ի անդամ չհանդիսացող պետությունը կարող է ստատուտի մասնակից դառնալ Անվտանգության խորհրդի հանձնարարականով, Գլխավոր ասամբլեայի կողմից յուրաքանչյուր դեպքում սահմանվող պայմանների հիման վրա: Դատարանը ընտրվում է 9 տարի ժամկետով, 15 դատավոր կազմով, որը 3 տարին մեկ նորացվում է մեկ երրորդով: Դատարանի կազմից ընտրվում է

նախագահի և փոխնախագահի (3 տարի ժամկետով), նշանակվում քարտուղար (7 տարի ժամկետով): Թեկնածուներ առաջադրում են *միջնորդ դատարանի մշտական պալատի* ազգային խմբերը կամ հատուկ նշանակված խմբերը: Ըստ ստատուտի, դատարանի կազմում պետք է ապահովվի «քաղաքակրթության կարևորագույն ձևերի և աշխարհի հիմնական իրավական համակարգերի» ներկայացուցչությունը: Կոչված է զբաղվելու միջպետական վեճերի կարգավորմամբ: Նրա իրավասությունը սկզբունքորեն ֆակուլտատիվ է, կարող է վեճի քննարկումն ստանձնել միայն վեճի մասնակից բոլոր պետությունների համաձայնությամբ: Բացի ստատուտում նշված հատուկ դեպքերից, դատարանը նիստեր է գումարում ամբողջ կազմով: Աշխատանքային վեճեր, տրանզիտին և կապին վերաբերող գործեր քննելու համար կարող է ստեղծել մեկ կամ մի քանի պալատ (3 կամ ավելի թվով դատավորներով), որոնցից յուրաքանչյուրի կայացրած վճիռը համարվում է ամբողջ դատարանի վճիռը: ՄԱԿ-ի անդամ պետություններն իրավունք ունեն այս կամ այն վեճը համարել դատարանին պարտադիր ենթակա կամ որոշ կատեգորիայի վեճերի քննարկման իրավունքը հանել նրա իրավասության շրջանակից: ՍՍՀՄ-ը հայտարարություն չի արել դատարանի իրավասությունը պարտադիր համարելու մասին: Միջազգային կոնվենցիաներին միանալիս ՍՍՀՄ-ը վերապահումով հայտնում է, որ կոնվենցիայի մեկնաբանման և կիրառման շուրջը ծագած վեճի կապակցությամբ հրաժարվում է ենթարկվել դատարանի իրավասությունը պարտադիր լինելու մասին բանաձևին: Դատավարությունը բաղկացած է 2 մասից՝ գրավոր և բանավոր: Մ. դ-ում պաշտոնական լեզուները ֆրանսերենն ու անգլերենն են, սակայն վիճող կողմերից յուրաքանչյուրի միջնորդությամբ դատարանը պարտավոր է նրան իրավունք տալ հանդես գալու այլ լեզվով: Դատարանի որոշումները վերջնական են, բողոքարկման ենթակա չեն: Նրան իրավունք է վերապահված ՄԱԿ-ի հաստատությունների հարցումներին տալ կոնսուլտատիվ եզրակացություն: Մ. դ-ի աշխատատեղին Հաագան է:

*Գրկ.* Кожевников Ф. И., Шармазанашвили Г. В., Международный суд ООН, М., 1971. *Ա. Եսայան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԵՐԱՇԽԻՔՆԵՐ**, միջազգային իրավունքի նորմերի և պարտավորությունների կատարումն ապահովող միջոցներ: Հնում և միջնադարում Մ. ե. էին թագավորի կամ նրա լիազորած անձի երդումը, պատանդներ վերցնելը, թանկարժեք իրեր կամ տերիտորիա գրավ դնելը ևն: XIX դարից սկսած, որպես Մ. ե., լայնորեն կիրառվում է տերիտորիայի օկուպացիան: Այժմ Մ. ե-ի հիմնական ձևը մի քանի պետությունների միջև կնքվող երաշխիքային պայմանագիրն է, որով մասնակիցները պարտավորվում են պահպանել միջազգային հարաբերություններում արդեն ձևավորված կամ երաշխիքային պայմանագրով սահմանված դրությունը կամ ապահովել նրանց միջև կնքված պայմանագրի կատարումը մյուս պետությունների կողմից: Անցյալում երաշխիքային պայմանագրեր կնքում էին մեծ տերությունները՝ թույլերի դեմ: Երաշխավորման օբյեկտներ էին քաղ. անկախությունը, տերիտորիալ ամբողջականությունը, ստատուս-քվոյի պահպանումը, մշտական *չեզոքությունը* ևն: Այն պետությունները, որոնց իրավունքներն ու շահերը երաշխավորվում էին, երաշխիքային պայմանագրերի մասնակիցներ չէին: XX դ. երևան եկան փոխադարձ երաշխիքների մասին բազմակողմ պայմանագրեր (տես *Լոկառնոյի պայմանագրեր 1925*), զգալիորեն տարածվեց երաշխիքների ու չեզոքության մասին երկկողմ պայմանագրեր կնքելու պրակտիկան (օրինակ, ՍՍՀՄ-ի պայմանագրերը հարևան պետությունների հետ): ՍՍՀՄ պրակտիկայում Մ. ե-ի ինստ. օգտագործվում է ի շահ խաղաղության և ժողովուրդների անվտանգության ապահովման: Մ. ե. է բովանդակում միջուկային զենքը չտարածելու մասին պայմանագիր կնքելու (1968) կապակցությամբ ՍՍՀՄ-ի, ԱՄՆ-ի ու Անգլիայի հայտարարությունը, որով պայմանագրի մասնակից ոչ միջուկային պետության դեմ քիմ., միջուկային զենք կիրառելու կամ նման ագրեսիայի սպառնալիք ստեղծելու դեպքում, ՄԱԿ-ի կանոնադրության համապատասխան, առաջանում է տուժողին անհրաժեշտ օգնություն ցույց տալու պարտավորություն (տես նաև *Պայմանագիր միջազգային*): *Ա. Եսայան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԵՐԿՐԱՖԻԶԻԿԱԿԱՆ ՏԱՐԻ** (**ՄԵՏ**), 1957-ի հուլիսի 1-ից մինչև 1958-ի դեկտեմբերի 31-ը ընկած ժամանակահատվածը (18 ամիս), որի ընթացքում 67 պետություններ ամբողջ երկրագնդի տարածքում միասնական ծրագրով և մեթոդով կատարեցին երկրաֆիզիկական դիտարկումներ և հետազոտություններ: ՄԵՏ-ը հաջորդեց երկու Միջազգային բևեռային տարիներին: Նրա անցկացումը ղեկավարեց հատուկ կոմիտե: 1959-ին ՄԵՏ-ը շարունակվեց որպես Միջազգային երկրաֆիզիկական համագործակցություն (ՄԵՀ): ՄԵՏ-ի ծրագրի մեջ, որը հարմարեցված էր արեգակի մաքսիմում ակտիվության ժամանակին, մտնում էին օդաբանական, օդերևութաբանական, օվկիանոսագիտական, սառցադաշտաբանական, մագնիսային, գրավիմետրական և սեյսմիկ դիտարկումներ: Ուսումնասիրվեցին մթնոլորտի վերին շերտերը՝ բևեռափայլը, իոնոսֆերան, երկնաքարերը, ինչպես նաև տիեզերական ճառագայթները: Դա մեծ ներդրում էր Արեգակ—Երկիր կապերի հետազոտման գործում: Հատուկ նշանակություն ունեցավ Անտարկտիկայի ուսումնասիրությունը, որտեղ տարբեր երկրներ ստեղծել էին բազաներ դիտարկումների համար (օրինակ, սովետական «Միռնի» դիտակայանը): Բոլոր օվկիանոսներում կատարվեցին բազմաթիվ հիդրոգրաֆիական կտրվածքներ, մասնավորապես սովետական «Վիտյազ» և «Օբ» նավերով: ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը Արկտիկայում մեծ սառցաբեկորների վրա տեղակայեցին մի քանի լողացող դիտակայաններ: ՄԵՏ-ի անցկացման ժամանակ օգտագործվեցին նորագույն սարքեր և ուսումնասիրության միջոցներ (օրինակ, արձակվեցին մեծ քանակությամբ երկրաֆիզիկական հրթիռներ, Երկրի արհեստական արբանյակներ), և դրանց օգնությամբ տրվեցին մթնոլորտի խորության և ջերմաստիճանի առաջին գնահատականները 200 *կմ*-ից վեր շերտերում: Բացահայտվեցին Երկրի ռադիացիոն գոտիները: Հաջողվեց որոշել երկնաքարային նյութի խտությունը միջմոլորակային տարածությունում (որը կարևոր է տիեզերական թռիչքների անվտանգության ապահովման համար): ՄԵՏ-ի դիտարկումների նյութերով Անտարկտիդայում հայտնաբերվեց ցրտության Հարավային բևեռը մինչև —57°C միջին տարեկան ջերմաստիճաններով, որոշվեց Անտարկտիդայի ափերի մոտ ցիկլոնների առավել կրկնողության 6 մարզերի միջին դիրքը: Երկնաքարերի լույս արձակող (լուսատու) հետքերի տեսողական ռադիոլոկացիոն դիտարկումները հնարավորություն ընձեռեցին որոշել քամու արագությունը և ուղղությունը մինչև 110 *կմ* բարձրության վրա: Օվկիանոսի առավել խոր մասերում հայտնաբերվեցին բավական արագ հոսանքներ: Սեյսմիկ դիտարկումները ցույց տվեցին, որ մայր ցամաքների եզրերով ձգվող հրաբխային զոնաները կապված են նուրբ օվկիանոսային երկրակեղևից հզոր ցամաքայինին անցման հետ: Նոր սառցադաշտային շրջաններ գտնվեցին Արևելյան Սիբիրում: Բևեռափայլի սպեկտրի օգնությամբ ապացուցվեց հելիումի առկայությունը Երկրի վերին մթնոլորտում: ՄԵՏ-ի առաջին գիտական արդյունքները ամփոփեցին 1958-ին, Մոսկվայում կայացած ՄԵՏ-ի ասամբլեայում: ՄԵՏ-ի դիտարկումների բոլոր նյութերի կրկնօրինակները պահպանվում են տվյալների համաշխարհային կենտրոններում (ՏՀԿ)՝ Վաշինգտոնում, Մոսկվայում և մի քանի այլ կենտրոններում, օրինակ՝ Ժնևում, Լոնդոնում:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԻՆՎԵՍՏԻՑԻՈՆ ԲԱՆԿ** (**ՄԻԲ**), սոցիալիստական երկրների երկարաժամկետ (մինչև 15 տարի) և միջին ժամկետի (մինչև 5 տարի) վարկավորման բանկ: Ստեղծվել է 1970-ին, սոցիալիստական տնտ. ինտեգրացման, անդամ-երկրների տնտ. համագործակցության առավել զարգացման ու խորացման, նաև կապիտալ շինարարության համար ռեսուրսների համակենտրոնացման ու դրանց օգտագործման փոխհամաձայնեցման նպատակով: Բանկի անդամներն են Բուլղարիան, ԳԴՀ-ն, Լեհաստանը, Կուբան, Հունգարիան, Մոնղոլիան, Չեխոսլովակիան, Ռումինիան, ՍՍՀՄ-ը, Վիետնամը, 1974-ից համագործակցում է նաև Հարավսլավիան: Կանոնադիր կապիտալը 1071,3 մլն *փոխանակային ռուբլի* է (1979): Անդամ-երկրների քվոտաները սահմանվում են ելնելով նրանց փոխադարձ առևտրում արտահանության ծավալից: Ունի նաև ռեզերվային կապիտալ ու հատուկ ֆոնդեր: Վարկերը կրում են պլանային, նպատակային, ժամկետային բնույթ և տրամադրվում են (տարեկան 4—6% վճարով) առաջին հերթին բարձր արդյունավետություն ապահովող օբյեկտների շինարարությանը: 1971—78-ին վարկավորել է 61 օբյեկտ՝ տրամադրելով ավելի քան 3 մլրդ փոխանակային ռուբլի:

ՄԻԲ-ի ղեկավար մարմիններն են Խորհուրդը և Վարչությունը: Խորհուրդը կառավարման բարձրագույն կոլեկտիվ մարմինն է, որտեղ մեկ ձայնի իրավունքով ներկայացվում են բոլոր անդամ-երկրները: Վարչությունը գործադիր մարմին է և իրականացնում է բանկի գործունեության անմիջական ղեկավարումը:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԻՐԱՎԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ**, միջպետական վեճերը կարգավորելու միջոց, որի դեպքում կողմերը դիմում են երրորդ անձանց՝ իրավարարների կամ միջնորդ դատավորների: Տարբերում են կամավոր (երբ կողմերը վեճը *իրավարարությանը* հանձնում են կամավոր, համաձայնում վեճի առարկայի, իրավարար ընտրելու կամ նշանակելու կարգի, կիրառվող իրավունքի աղբյուրների շուրջը ևն) և պարտադիր (երբ պետությունները որոշակի կատեգորիայի վեճեր իրավարարությանն են հանձնում նախօրոք կնքված համաձայնագրի համաձայն): Իրավարարությունը, որպես միջազգային վեճերը խաղաղ կարգավորելու միջոց, նախատեսված է ՄԱԿ-ի կանոնադրությամբ (հոդված 33) և երկկողմ ու բազմակողմ պայմանագրերով: Սովետական տնտ. կազմակերպությունների ու արտասահմանյան ֆիրմաների միջև առաջացած վեճերի լուծման համար ՍՍՀՄ-ում գործում են երկու մարմիններ՝ *ծովային իրավարարական հանձնաժողովն* ու արտաքին առևտրական իրավարարական հանձնաժողովը:

Մ. ի-յան ինստ-ի զարգացմանը, սկսած նրա սկզբնավորման շրջանից, նպաստել է նաև Հայաստանը: Դեռևս Տիգրան Բ Մեծի օրոք հայերը Մ. ի-յան միջոցով վեճեր են լուծել: Տիգրան Բ-ի և նրա որդու միջև եղած վեճը, որպես միջնորդ, լուծել է Պոմպեոսը՝ որդուն հանձնելով Կորդուքն ու Ծոփքը, հորը՝ Հայաստանի մնացյալ տարածքը: Մ. ի-յան օգնությամբ է լուծվել նաև հայ-պարթևական վեճը Կորդուքի և Հյուսիսային Միջագետքի վերաբերյալ: Պոմպեոսի առաջարկով վեճի քննարկումը հանձնվել է Մ. ի-յանը, որը վիճելի տարածությունը հանձնել է հայերին: Գագիկ Ա թագավորի որդիների՝ Աշոտի և Սմբատի միջև ծագած վեճը լուծել է Աբխազական և վրացական Գեորգ թագավորը: Պետությունների հետ կոնֆլիկտը խաղաղ կարգավորելու, Մ. ի. օգտագործելու հնարավորություններ է փնտրել նաև Կիլիկիայի հայկ. պետությունը: Պահպանվել են իրավարարական ակտիվ գործունեություն վարելու մասին բազմաթիվ փաստաթղթեր (այդ թվում նամակներ՝ ուղղված Հռոմի պապին): Իրավարարական պրակտիկան Հայաստանում, ավանդույթ դառնալու շնորհիվ, շարունակել է նաև պետականության կորստից հետո: Մասնավորապես, պետականությունը վերականգնելու վերաբերյալ տարբեր նախագծերում Մ. ի. դիտվել է որպես վեճերը խաղաղ կարգավորելու միջոց: Ռուս-հայկական հարաբերությունների մասին 1790-ին ձևակերպած փաստաթղթերից մեկի համաձայն, Հայաստանը ճանաչվում էր որպես անկախ պետություն, իր դեսպանն էր ունենալու Պետերբուրգում: Ռուսաստանի և Հայաստանի միջև վեճ առաջանալիս Գերմանիան լինելու էր երկու կողմերի իրավարարը: 1919—20-ի Փարիզի խաղաղության կոնֆերանսում դաշնակից երկրների Գերագույն խորհրդի, ապա Սևրի հաշտությունը կնքող պետությունների որոշմամբ ԱՄՆ-ի պրեզիդենտ Վ. Վիլսոնին էր հանձնվել հայ-թուրքական սահմանի որոշումը (տես *Վիլսոնի իրավարարական ռեժիմ*):

*Յու. Բարսեղով*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԻՐԱՎՈՒՆՔ** հ ա ն ր ա յ ի ն, միջպետական հարաբերությունները կարգավորող իրավական սկզբունքների և նորմերի ամբողջություն: Մ. ի-ի համակարգի մեջ են մտնում նաև միջազգային մասշտաբով ճանաչված տեղային (լոկալ) կամ մասնավոր (պարտիկուլյար) նորմերը, որոնք գործում են պետությունների սահմանափակ շրջանակի հարաբերություններում: Մ. ի-ի նորմերը ձևավորվում են բացահայտ (տես *Պայմանագիր միջազգային*) կամ լուռ (տես *Միջազգային սովորույթ*) համաձայնությամբ: Մ. ի-ի սուբյեկտները պետությունները, ազգերն ու միջպետական կազմակերպություններն են, որոնք ի վիճակի են ձեռնարկել ինքնուրույն գործողություններ: Մ. ի. ձևավորվել է պետությունների միջև տնտ., քաղ. և մշակութային կապերի ձևավորման հետ և զարգացել միջպետական հարաբերությունների բովանդակությանն ու մակարդակին համապատասխան: Պետության պատմական տիպերին համապատասխան, ձևավորվել են Մ. ի-ի ստրկատիրական, ֆեոդալական, բուրժ. տիպերը: Մ. ի-ի մի շարք նորմեր (անձեռնմխելիություն, արտերկրայնություն, իրավարարություն ևն) ձևավորվել են ստրկատիրական հասարակարգում: Ֆեոդալիզմի դարաշրջանում Մ. ի-ի զարգացման գործում խոշոր դեր են ունեցել Կիլիկյան Հայաստանը, Վենետիկը, Ֆլորենցիան, Ջենովան և այլ պետություններ, որոնց միջազգային-իրավական դերը հատկապես ակնառու էր միջազգային ծովային առևտրի, միջազգային ծովագնացության ասպարեզում (տես *«Կոնսոլատո դել մարե»*, *Ծովահենություն*, *Կապերություն*): XV դ., որպես մշտական մարմիններ, հաստատվեցին դիվանագիտական ներկայացուցչություններն ու հյուպատոսությունները (տես *Դիվանագիտություն*, *Հյուպատոսություն* հոդվածները): *Պակտա սունտ սերվանդա*, *սուվերենություն* և Մ. ի-ի մի շարք այլ առանցքային սկզբունքներ կյանքի են կոչվել միջնադարում: Բուրժ. հեղափոխությունների շրջանում ձևավորվեցին իրավահավասարության, տերիտորիալ անձեռնմխելիության, ուրիշի ներքին գործերին չմիջամտելու, ավելի ուշ՝ պետությունների ճանաչման, իրավահաջորդության, բարի ծառայության և այլ սկզբունքները:

Արդի Մ. ի. կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու շրջանի իրավունք է, որի շրջանակներում ընդարձակվել են սոցիալիստական Մ. ի-ի նորմերը: ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների ներգործությամբ կիրառություն են գտնում նոր առաջադիմական սկզբունքներ՝ ուժի գործադրման կամ գործադրման սպառնալիքի արգելումը միջազգային հարաբերություններում, ազգերի ու ժողովուրդների ինքնորոշումը, միջազգային վեճերի խաղաղ կարգավորման պարտավորությունը, պետ. սուվերենության հարգումը, պետությունների ներքին գործերին չմիջամտելը ևն (տես *Խաղաղ գոյակցություն*): Մ. ի-ի դեմոկրատական սկզբունքներին համապատասխան, պետություններն իրավունք ունեն սուվերեն իրավահավասարության սկզբունքով հարաբերություններ հաստատել ուրիշ պետությունների հետ, այդ երկրներում ունենալ դիվանագիտական և հյուպատոսական հաստատություններ, կնքել միջազգային պայմանագրեր, լինել միջազգային բաց կազմակերպությունների անդամ: Նոր պետությունների ձևավորման արդի փուլում, Մ. ի-ի համակարգում գործնական նշանակություն է ստացել իրավահաջորդությունը: Մ. ի-ի կարգավորման առարկա են քաղաքացիություն ձեռք բերելու կամ կորցնելու, արտասահմանցիների իրավական դրության, ապաստանի իրավունքի, մարդու իրավունքների և հիմնական ազատությունների, ապարտհեյդի, ցեղասպանության դեմ պայքարի իրավահարաբերությունները: Մ. ի-ի մեջ կարևոր նշանակություն ունեն *ճանաչման*, պետության տերիտորիալ անկախության, պետ. սահմանների սահմանման կամ փոփոխման իրավունքները, *չեզոքության* սկզբունքը: Մ. ի-ի կարգավորման շրջանակը շարունակ ընդարձակվում է նոր ինստ-ների ու նորմերի հաշվին (շրջապատող միջավայրի պահպանման, զարգացող երկրների հետ առնչվող խնդիրների ու նոր տնտ. կարգի հաստատման հետ կապված նորմեր ևն): Մ. ի-ում շարունակ աճում է *միջազգային կազմակերպությունների* գործունեությամբ ձևավորված իրավունքը: Արդի Մ. ի., մերժելով ագրեսիվ պատերազմներն ու ուժի գործադրումը՝ որպես քաղաքականության միջոց, նախատեսում է միջազգային վեճերի լուծման հետևյալ սկզբունքները՝ դիվանագիտական բանակցություններ, բարի ծառայություն և միջնորդություն, ռազմ. բախումների դեպքում պատերազմի օրենքների և սովորույթների միջոցով պետությունների հարաբերությունների կարգավորում: Մ. ի. նախատեսում է *խաղաղ բնակչության* պաշտպանությունը, սահմանում է գերիների, վիրավորների ու հիվանդների, մշակույթի արժեքների պաշտպանության իրավական ռեժիմներ: Մ. ի-ի հիմնական սկզբունքներն ամրապնդված են *Միավորված ազգերի կազմակերպության* կանոնադրությունում: Նրա կոդիֆիկացման ու առաջադեմ սկզբունքների զարգացման հարցերը քննարկվում են ՄԱԿ-ի միջազգային իրավունքի հանձնաժողովում, որի աշխատանքներին ակտիվորեն մասնակցում են ՍՍՀՄ-ն ու սոցիալիստական մյուս պետությունները: Մ. ի-ի նորմերի խախտման համար պետությունները կրում են նյութական, իսկ անհատները՝ քրեական պատասխանատվություն:

Հ ա յ ա ս տ ա ն ը, որպես Մ. ի-ի սուբյեկտ, մշտապես մասնակցել է դրա ձևավորմանը, նպաստել նրա առաջադիմական սկզբունքների զարգացմանը: Մ. ի-ի որոշ նորմեր, որոնք կիրառել են հայերը, արտացոլվել են իրավունքի ազգային հուշարձաններում: Հայաստանի միջազգային կապերին վերաբերող օտարերկրյա աղբյուրներում պահպանված փաստաթղ-

թերի բնագրերը (միջազգային պայմանագրեր, թագավորների գրագրություններ, հայկ. դեսպաններին տրված հավատարմագրեր են) վկայում են Հայաստանի միջազգային աշխույժ կապերի մասին: Հայաստանի արտաքին քաղաքականության հիմնական նպատակը եղել է անկախության, մյուս պետությունների հետ իրավահավասարության ապահովումը, որին հասնելու համար կիրառվել են իրավական տարբեր միջոցներ, մշակվել քաղ. փոխհարաբերությունների բազմազան ձևեր: Դիվանագիտական պրակտիկայի ուսումնասիրությունը վկայում է, որ հնուց ի վեր Հայաստանում մշակված են եղել պետությունների հետ փոխհարաբերությունների տեխնիկան ու արարողությունը (բարձր մակարդակով հանդիպումներ, գրագրություններ, դինաստիական ամուսնություններ են): Անկախ արտաքին քաղաքականություն վարելու մասին են վկայում ռազմաքաղ. դաշինքների կնքումը, զինված չեզոքության պահպանումը, օտարերկրացիներին քաղ. ապաստան տալը և էքստրադիցիայի (տես *Հանցագործների հանձնում*) մերժումը: Հայաստանը ամենատարբեր առաքելություններով (բախումների կանխում, խաղաղության վերահաստատում, ռազմաքաղաքական դաշինք, տերիտորիալ վեճեր, դինաստիական ամուսնություններ, թագադրման շնորհավորանքներ, պետության գլխի մահվան դեպքում ցավակցությունների հաղորդում են հարցեր) դեսպանություններ է փոխանակել աշխարհի բազմաթիվ երկրների հետ: Որպես կանոն, դեսպանություններն ուղարկվել են (ակտիվ դեսպանություն) և ընդունվել (պասսիվ դեսպանություն) հատուկ նշանակությամբ (ժամանակակից տերմինաբանությամբ՝ ad hoc դեսպանություններ): Արևմուտքի և Արևելքի տնտ. կապերի հանգուցակետերում գտնվելու շնորհիվ, Բագրատունյաց, հատկապես Կիլիկյան Հայաստանում, զարգացել են միջազգային մասնավոր և հանրային իրավունքները: Բազմաթիվ պայմանագրեր են կնքվել, առևտրատնտեսական կապեր հաստատվել դեսպանությունների փոխանակման միջոցով: Միջազգային կապերի զարգացման հետ փոխվել է դեսպանությունների գործունեության բնույթը, մեկնած երկրում նրանց մնալու տևողությունը: Այդ պրակտիկան է հանգեցրել է մշտական դեսպանությունների ձևավորմանը, որի նախադրյալը մշտական *հյուպատոսություններն* էին: Հետագայում հյուպատոսություններից վերաճեցին ու առանձնացան մշտական դիվանագիտական ներկայացուցչությունները: Դիվանագիտական ընդարձակ կապերի շնորհիվ Հայաստանում դեսպանական իրավունքի ու դիվանագիտական ներկայացուցչության միջազգային-իրավական հիմքերը դրվել են ավելի վաղ: Դեսպաններ ընդունելու՝ Հայաստանում ձևավորված ծիսակատարություններն ու արարողությունները կազմում էին ասիական դիվանագիտական արարողությունների ինքնուրույն մասը: Դեսպանին ընդունում էր պետության գլուխը, որին, հանդիսավոր պայմաններում, հանձնվում էր հավատարմագիրը: Վաղ ժամանակներից ի վեր հայերը միջազգային վեճերի արդյունավետ լուծման կարևոր պայման են համարել դեսպանների, դիվանագիտական այլ ներկայացուցիչների, ընդհուպ բարձր մակարդակով հանդիպումների միջոցով բանակցությունների վարումը, միջնորդությունների, բարի ծառայությունների և, վերջապես, միջնորդ դատարանի օգտագործումը՝ նախապատվություն տալով դիվանագիտական բանակցություններին (տես *Դիվանագիտություն*, *Միջազգային իրավարարություն*): Շահագրգռված լինելով միջազգային ծովային առևտրի զարգացմամբ՝ հայերը զգալի ավանդ են թողել միջազգային ծովային իրավունքի նորմերի ստեղծման գործում (տես նաև *«Կոնսոլատո դել մարե»*, *Նավաբեկությունից առաջացած իրավունք*, *Տովահենություն*, *Կապերություն*):

Շարունակ լինելով պատերազմների թատերաբեմում՝ հայերը, ի սկզբանե, մշակել են *պատերազմի* և խաղաղության ըմբռնման առաջադիմական սկզբունքները:

Պետականության կորստից հետո Հայաստանը գործնականում դադարում է Մ. ի-ի սուբյեկտ լինել, սակայն միջազգային իրավական հարաբերությունները շարունակել են զարգանալ ազգային-ազատագրական, առևտրական կազմակերպությունների միջոցով: XIX դ. կեսից հայ ազատագրական պայքարը մղվում էր ոչ միայն ազգային անկախություն ձեռք բերելու, այլև, առաջին հերթին, թուրքական լուծը թոթափելու նպատակով: Դարերով հարստահարված հայ ժողովուրդը, կանգնելով բնաջնջման սպառնալիքի առջև, ազգային անկախություն ձեռք բերելու հույսեր էր փնտրում Արևմտյան Եվրոպայի երկրներում ու Ռուսաստանում: *Հայկական հարցը* դառնում է միջազգային համաժողովների քննարկման առարկա:

*Գրկ.* Ե ս ա յ ա ն Ա. Ա., Միջազգային իրավունք, հ. 1—2, Ե., 1971—1973: Курс международного права, т. 1—6, 1967—1973; Т у н к и н Г. И., Теория международного права, М., 1970.

*Յու. Բարսեղով*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԻՐԱՎՈՒՆՔԻ ԱՍՈՑԻԱՑԻԱ**, ոչ կառավարական միջազգային կազմակերպություն: Հիմնադրվել է 1873-ին՝ Բրյուսելում: «Մ. ի. ա.» անվանումը օգտագործվում է 1895-ից: Ըստ կանոնադրության, կոչված է ուսումնասիրել, մեկնաբանել և զարգացնել միջազգային հանրային ու մասնավոր իրավունքները՝ օրենքների բախումը վերացնելու և միասնականություն հաստատելու համար, հանդես գալ առաջարկություններով, ինչպես նաև նպաստել փոխըմբռնմանն ու բարի կամքի զարգացմանը: ՄԱԿ-ի տնտ. և սոցիալական խորհրդին և ՅՈՒՆԵՍԿՕ-ին կից ունի կոնսուլտատիվ ստատուս: Անդամությունը կոլեկտիվ և անհատական է: Անհատական անդամները ներկայացված են 65 երկրից (4 հզ. ավելի անդամ), 35 երկրում կան ազգային ասոցիացիաներ: Բարձրագույն մարմինը կոնֆերանսն է (հրավիրվում է երկու տարին մեկ), կոնֆերանսների միջև ընկած շրջանում՝ գործադիր խորհուրդը, որը գլխավորապես կազմվում է ազգային ասոցիացիաների պրեզիդենտներից: Խորհուրդը գլխավորում է Մ. ի. ա-ի պրեզիդենտը, ընթացիկ գործերը վարում է գլխավոր քարտուղարը: Մ. ի. ա-ի կազմում գործում են կոմիտեներ և հանձնաժողովներ հետևյալ հարցերով՝ խաղաղ գոյակցության իրավական կարգավորում, ՄԱԿ-ի կանոնադրություն, կանանց իրավական վիճակ, ընտանեկան հարաբերություններ, միջազգային բժշկական իրավունք, միջազգային ֆինանսական իրավունք, միջազգային առևտրական իրավարարություն, ատոմային էներգիայի խաղաղ օգտագործման իրավական կարգավորում են: Մ. ի. ա. 2 տարին մեկ հրատարակում է կոնֆերանսների հաշվետվությունը: Պաշտոնական լեզուներն են անգլերենն ու ֆրանսերենը: ՍՍՀՄ-ը Մ. ի. ա-ի անդամ է 1957-ից, ունի իր ազգային ասոցիացիան (300 մարդուց ավելի), 1958-ից հրատարակում է «Միջազգային իրավունքի սովետական տարեգիրք»-ը:

*Ա. Եսայան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ**, ժողովուրդների և պետությունների փոխհարաբերություններ, որոնք հենվում են ոչ բռնի միջոցներով վարվող արտաքին քաղաքականության ու պայմանագրերով ստանձնած պարտավորությունների հարգման վրա. նաև զինված պայքարի բացակայությունը պետությունների միջև: Հակամարտ դասակարգային հասարակարգերում Մ. խ. ընդմիջվում է *պատերազմներով* և ամրապնդում է դրանց արդյունքները: Մ. խ-յան, ինչպես և պատերազմի բնույթը, պայմանավորված է հասարակության պատմական զարգացման աստիճանով, տիրող դասակարգերի քաղաքականությամբ:

Պատմական զարգացման նոր դարաշրջանը սկսվում է սոցիալիզմով, որի բնույթն իսկ ենթադրում է ձգտում Մ. խ-յան, որի համար պայքարում են կոմունիստները: Սովետական կառավարության առաջին դեկրետում (տես *Դեկրետ հաշտության մասին*) դեմոկրատական, խաղաղության ծրագիրը օրգանապես կապված է նոր սկզբունքի՝ սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների *խաղաղ գոյակցության* հետ: Մ. խ-յան ժամանակակից հարցադրումը, որ հիմնավորվել է կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցություններում (1957, 1960, 1969), ելնում է սոցիալիզմի և կապիտալիզմի միջև ուժերի հարաբերակցության փոփոխությունից, այն սկզբունքային դրույթից, որ ՍՍՀՄ-ի և սոցիալիստական համագործակցության մյուս պետությունների խաղաղասիրական քաղաքականությունը, նրանց համաձայնեցված քաղաքականության հարաճուն ներգործությունը համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա, կապիտալի երկրներում բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների պայքարի ուժեղացումը, ազգային-ազատագրական շարժման ծավալումը, խաղաղության կողմնակիցների ելույթները՝ վերացնում են նոր համաշխարհային պատերազմի ճակատագրական անխուսափելիությունը: Պատերազմի միջոցների կործանարար ուժի աննախադեպ մեծացման հետևանքով Մ. խ. դարձել է համամարդկային խնդիր: Մ. խ-յան կարևոր նախադրյալներ են սպառազինությունների մըր-

ցավազքի դադարեցումն ու պատերազմի օջախների վերացումը, միջազգային համագործակցության զարգացումը:

Սովետական պետության, խաղաղասեր մյուս ուժերի պայքարը լարվածության թուլացման համար 1970-ական թթ. հանգեցրին միջազգային իրադրության առողջացման: Լարվածության թուլացման պրոցեսում ամրապնդվեց և սկսեց տնտ. և քաղ. կոնկրետ բովանդակությամբ հարստանալ տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը: Նշմարվեց «սառը պատերազմի» անկում, ավելի նպաստավոր օբյեկտիվ նախադրյալներ ստեղծվեցին վիճելի հարցերը և միջազգային կոնֆլիկտները արդարացի խաղաղ կարգավորման միջոցներով լուծելու համար:

Սակայն այդ պրոցեսը խաթարվել է 80-ական թթ. սկզբին, երբ ագրեսիվ իմպերիալիստական շրջանները և, ամենից առաջ, ԱՄՆ-ի ղեկավարությունը նորից վերցրել են աշխարհում ստեղծված ռազմ. հավասարակշռությունը [որը «սկզբունքային, պատմական նշանակություն ունեցող նվաճում է» (ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի 1980-ի հունիսի 23-ի որոշումից)] իրենց օգտին՝ ի վնաս Սովետական Միության, սոցիալիստական երկրների, ի վնաս միջազգային լարվածության թուլացման և ժողովուրդների անվտանգությունը խախտելու կուրս:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹՅՈՒՆ**, ինքնակառավարում չունեցող որոշ տերիտորիաների կառավարման միջազգային համակարգ. ձևավորվել է 1939—45-ի երկրորդ համաշխարհային պատերազմից հետո՝ ՄԱԿ-ի կանոնադրության համաձայն: Մ. խ-յան համակարգը տարածվում էր խնամակալության մասին համաձայնագրերով նրա մեջ ընդգրկվող տերիտորիաների, այդ թվում՝ Ազգերի լիգայի *մանդատային տերիտորիաների*, հիտլերյան կոալիցիայի պետություններից անջատված տերիտորիաների, ինչպես և այն տերիտորիաների վրա, որոնք համակարգի մեջ են մտցվել դրանց կառավարման համար պատասխանատու պետությունների կամավոր համաձայնությամբ: Խնամակալական իշխանությունն իրականացվում է ՄԱԿ-ի անունից և նրա ղեկավարությամբ: Ստրատեգիական համարվող տերիտորիաների խնամակալության բոլոր ֆունկցիաներն իրականացնում է ՄԱԿ-ի Անվտանգության խորհուրդը, մյուս տերիտորիաների վերաբերյալ՝ Գլխավոր ասամբլեան, որին օգնում է այդ նպատակով ստեղծված հատուկ մարմինը՝ ՄԱԿ-ի խնամակալական խորհուրդը: Մինչև 1950-ը Մ. խ-յան համակարգի մեջ էին մտնում Տանգանիկան, Բրիտանական Կամերունն ու Բրիտանական Տոգոն (խնամակալը՝ Մեծ Բրիտանիա), Ֆրանսիական Կամերունն ու Տոգոն (Ֆրանսիա), Ռուանդա-Ուրունդին (Բելգիա), Նոր Գվինեան (Ավստրալիա), Արևմտյան Սամոան (Նոր Զելանդիա), Մարշալյան, Մարիանյան և Կարոլինյան կղզիները (ԱՄՆ), Նաուրու կղզին (Մեծ Բրիտանիա, Ավստրալիա, Նոր Զելանդիա), Սոմալին (Իտալիա): Մ. խ-յան մասին ՄԱԿ-ի կանոնադրությունը շարունակ խախտվել է, կառավարվող տերիտորիաները դիտվել են որպես կառավարող պետությունների անբաժանելի մասը, այդ տերիտորիաներում ստեղծվել են ռազմ. բազաներ ևն: Մ. խ-յամբ կառավարվող երկրները մանդատային տերիտորիաներից էապես չէին տարբերվում: Նրանց մեծ մասի բնակիչները զուրկ էին քաղ. իրավունքներից: Ազգային-ազատագրական շարժման ծավալման հետևանքով խնամարկյալ տերիտորիաների մեծ մասը ստացել է անկախություն: ՍՍՀՄ-ը և սոցիալիստական մյուս երկրները հետևողականորեն պայքարում են գաղութատիրության բոլոր ձևերի վերացման համար: Գաղութային երկրներին ու ժողովուրդներին անկախություն տալու մասին ՄԱԿ-ի ընդունած դեկլարացիայից (1960) հետո Մ. խ-յան համակարգը փաստորեն կորցրել է նշանակությունը: 1980-ի դրությամբ պահպանվում է ինքնակառավարում չունեցող և խնամարկյալ 23 տերիտորիա՝ 6,2 մլն ընդհանուր բնակչությամբ, այդ թվում՝ ԱՄՆ-ի կառավարման ներքո՝ 7, Մեծ Բրիտանիայի՝ 13, Ավստրալիայի՝ 1, Նոր Զելանդիայի՝ 1, Հարավ-Աֆրիկյան Հանրապետության՝ 1:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԽՈՐՀՈՒՐԴ ԳԻՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ (ՄԽԳՄ)**, (International Council of Scientific Unions-ICSU), միջազգային գիտական ոչ կառավարական կազմակերպություն, որը միավորում է ճշգրիտ և բնական գիտությունների միջազգային գիտական միություններ և տարբեր երկրների ազգային գիտական հաստատություններ (ԳԱ-ներ, գիտահետազոտական կենտրոններ ևն): ՅՈՒՆԵՍԿՕ-ում ունի խորհրդակցական ստատուս: Հիմնադրվել է 1899-ին, որպես ակադեմիաների միջազգային ասոցիացիա՝ խիստ սահմանափակ թվով անդամներով: Ներկա անվանումը կրում է 1931-ից: ՄԽԳՄ կազմում կան շուրջ 20 միջազգային գիտական միություններ և գրեթե 70 երկրների ԳԱ-ներ, գիտահետազոտական խորհուրդներ ու կենտրոններ: ՍՍՀՄ ԳԱ-ն ՄԽԳՄ անդամ է 1955-ից: Հիմնական խնդիրներն են. գիտական հետազոտությունների խրախուսում, միջազգային գիտական միությունների գործունեության կոորդինացում և համաշխարհային բնույթի գիտական բազմաճյուղ ծրագրերով հետազոտությունների կազմակերպում: Վերջին բնագավառում կարևոր արդյունքներ են ստացվել ՄԽԳՄ-ի կազմակերպած «Միջազգային երկրաֆիզիկական տարի», «Հանգիստ Արեգակի միջազգային տարի», «Ակտիվ Արեգակի միջազգային տարի» ծրագրերի իրականացման շնորհիվ: Զգալի հաջողություններ ունեն նաև տիեզերական հետազոտությունների, շրջակա միջավայրի ուսումնասիրման, միջազգային կենսաբանական, համաշխարհային օվկիանոսի ու Անտարկտիկայի հետազոտության ծրագրերը: ՄԽԳՄ բարձրագույն օրգանը գլխավոր ասամբլեան է (հրավիրվում է 2 տարին մեկ), գործադիր օրգաններն են գլխավոր կոմիտեն և գործադիր բյուրոն: ՄԽԳՄ քարտուղարությունը, որը վարում է ընթացիկ գործերը, գտնվում է Փարիզում: *Վ. Հ. Համբարձումյանն* ընտրվել է ՄԽԳՄ գլխավոր կոմիտեի անդամ (1966, Բոմբեյ), պրեզիդենտ (1968, Փարիզ և 1970, Մադրիդ): Այդ կապակցությամբ ՄԽԳՄ տարեկան նստաշրջանը տեղի է ունեցել Երևանում (1969): ՄԽԳՄ-ն հրատարակում է «Year Book» (ամենամյա) և «ICSU Bulletin» (եռամսյա) տեղեկագիր օրգանները: *Լ. Միրզոյան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԾՈՎԱՅԻՆ ԻՐԱՎՈՒՆՔ**, միջազգային իրավունքի ճյուղ, որը կարգավորում է համաշխարհային օվկիանոսի օգտագործման հետ կապված պետությունների հարաբերությունները առևտրի և ռազմ. ծովագնացության, ձկնորսության, ծովային պաշարների օգտագործման, գիտության ասպարեզում: Մ. ծ. ի. ընդգրկվում է ծովային իրավունքի մեջ, որն իր հերթին ամփոփում է Միջազգային ծովային հանրային իրավունքը (միջազգային ծովային հարաբերությունների կարգավորման հարցերով պետությունների միջև կնքված պայմանագրեր ու համաձայնագրեր, նրանց գործունեությամբ ձևավորված սովորութային նորմեր), միջազգային ծովային մասնավոր իրավունքը [ինչպես այս կամ այն երկրի ներքին օրենսդրության կոլիզիոն նորմերը (տես *Միջազգային մասնավոր իրավունք*), այնպես էլ միջազգային համաձայնագրային նորմերը, որի մասնակիցը այս կամ այն պետությունն է] և ազգային ծովային իրավունքը (ծովային իրավունքի հարցեր, որոնք տարածվում են պետության ներքին, տերիտորիալ ջրերի նկատմամբ ևն): Մ. ծ. ի-ի նորմերը մշակվել են պետությունների միջև տնտ. կապեր հաստատելու պահից և անցել պատմական զարգացման երկարատև ուղի: Ի սկզբանե պետության տերիտորիա հասկացվել է նրա ցամաքային տարածությունը: Ծովը դիտվել է կամ որպես տերիտորիայի սահմանազատ գոտի և համընդհանուր սեփականություն, կամ «ոչ ոքի չպատկանող տարածություն»: Առանձին պետություններ (Հին Հռոմ, Ջենովա, Վենետիկ ևն) ձգտել են ծովը, նրանից ստացվող բոլոր բարիքները *յուրացնել*: Բոլոր երկրներին (ժողովուրդներին) ծովերից օգտվելու իրավունք վերապահելու սկզբունքների ու նորմերի համակարգման փորձեր արվել են հին դարերում (*Հռոդոսյան ծովային օրենք*) և միջնադարում [Ամալֆիական աղյուսակներ, Բյուզանդական բազիլիկներ (VII դ.), Օլերոնի ձեռագրերը (XIII—XIV դդ.), Հանզայի օրենսգիրք (XVII դ.), Բարսելոնի «Ծովային դատաստանագիրք», «*Կոնսոլատո դել մարե*» ևն]: Մ. ծ. ի-ի բուռն զարգացումն սկսվել է կապիտալիզմի շրջանում: Գաղութային զավթումների փուլում կապիտալիստական խոշոր պետությունները ձգտում էին Մ. ծ. ի-ում ամրապնդել և օրինականացնել ծովում հաստատված գերիշխանության իրավունքը: Պորտուգալիան, Իսպանիան և գաղութային մյուս տերությունները աշխարհի ծովերն ու օվկիանոսները բաժանում էին ազդեցության ոլորտների: Դրան զուգահեռ պայքար է մղվել Մ. ծ. ի-ի առաջադիմական սկզբունքների հաստատման օգտին, որն ամրապնդվել է միջազգային կոնվենցիաներում և համաձայնագրերում: Փորձեր են արվել մշակել ծովային պատերազմ մղելու միասնական նորմեր [Զինված *չեզոքության* մասին Ռուսաստանի դեկլարացիան՝ չեզոք

պետությունների հետ, 1856-ի Փարիզի դեկլարացիան, Հաագայի դեկլարացիաները (1890, 1907), Լոնդոնի 1909-ի դեկլարացիան, Լոնդոնի 1936-ի արձանագրությունը ևն]: Մ. ծ. ի-ի նորմերը համակարգելու, նրա առաջադիմական զարգացումը խթանելու նպատակով, 1958-ին հրավիրվել է ՄԱԿ-ի Մ. ծ. ի-ի առաջին կոնֆերանսը Ժնևում, որտեղ ամրապնդվել է *բաց ծովի* ազատության սկզբունքը: ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեան ստեղծել է ազգային իրավասությունից դուրս ծովերի և օվկիանոսների հատակը խաղաղ նպատակներով օգտագործելու գծով մշտական կոմիտե, որն զբաղվում է ծովի հատակի ռեժիմի հետ առնչվող միջազգային իրավական, տնտ., տեխ., ինչպես նաև ծովերի աղտոտման հետ կապվող հարցերի ուսումնասիրությամբ: 1970-ին հիշյալ կոմիտեն ընդունել է ծովերի և օվկիանոսների ազգային իրավասությունից դուրս նրա ընդերքի ռեժիմը կարգավորող սկզբունքների դեկլարացիա: Գլխավոր ասամբլեան ազգային իրավասությունից դուրս ծովերի և օվկիանոսների հատակը, ինչպես նաև այդ շրջանի ռեսուրսները հռչակել է համամարդկային սեփականություն: Սոցիալիստական համակարգի ստեղծումը նպաստեց Մ. ծ. ի-ի առաջադիմական միտումների հետագա զարգացմանը՝ առաջին հերթին օվկիանոսի կենսաբանական ռեսուրսների օգտագործումն ընդլայնելու, կենդանական օբյեկտները պահպանելու, համաշխարհային օվկիանոսը խաղաղ նպատակներով օգտագործելու ուղղությամբ: Մ. ծ. ի-ի առաջադիմական զարգացմանը նպաստել են նաև հայ վաճառական-ծովագնացները: Նրանք պայքարել են ծովում գերիշխանություն հաստատելու փորձերի դեմ: Անգլիայի, Ֆրանսիայի, Արևմուտքի և Արևելքի այլ պետությունների դատարաններում հայ վաճառականների հարուցմամբ քննվող գործերը դրվեցին առևտրական ծովագնացության սահմանափակումների դեմ մղվող պայքարի հիմքում (տես *Ծովահենություն*): Մ. ծ. ի-ի առաջադիմական նորմեր են պարունակել Մխիթար Գոշի և Աստրախանի հայոց դատաստանագրքերը (տես *Նավաբեկությունից առաջացած իրավունք*): Միջազգային օրինականության, բոլոր ժողովուրդներին ծովագնացության հավասար իրավունք վերապահելու համար հայերի պայքարը, ազգային օրենքներում համապատասխան նորմերի ամրապնդումն էապես նպաստեցին Մ. ծ. ի-ի առաջադիմական սկզբունքների հաստատմանը:

*Գրկ.* Волков А. А., Морское право, М., 1969; Актуальные проблемы современного морского права, М., 1972; Новое в международном морском праве, М., 1972.

*Յու. Բարսեղով*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, պետությունների կամ ազգային ընկերությունների (ասոցիացիաների) ոչ-կառավարական միավորումներ, որոնք հիմնադրվում են քաղ., տնտ., սոցիալական, գիտատեխնիկական, մշակութային և այլ բնագավառներում ընդհանուր նպատակի հասնելու համար: Պետությունների բազմակողմանի համագործակցության ձևերից է: Մ. կ. ստեղծելու առաջին փորձերն արվել են դեռևս հին դարերում: Ժամանակակից ըմբռնմամբ Մ. կ-ի ինստ. հայտնի է XIX դ. 2-րդ կեսից: Մ. կ-ի գործունեությունն սկսվել է պետությունների տնտ. կապերի, դրանցից բխող նրանց բազմակողմանի համագործակցության զարգացման շնորհիվ: Առաջին Մ. կ. (Միջազգային վարչական միություններ) զարգացել են կապիտալիզմի գերիշխանության պայմաններում՝ կրելով շուկաների և ազդեցության ոլորտների համար մղվող պայքարի, գաղութային և կախյալ ժողովուրդներին իրավազրկության մեջ պահելու և կապիտալի իշխանությամբ պայմանավորված այլ հարաբերությունների կնիքը: Մշտական հիմքով միջազգային բազմակողմանի համագործակցությունը նախ և առաջ ծավալվել է այնպիսի հատուկ հարցերով, ինչպես տրանսպորտը, կապը ևն (Փոստի համաշխարհային միություն, Էլեկտրակապի միջազգային միություն): Պետությունների քաղ. համագործակցության առաջին փորձը Մ. կ-ի շրջանակում կատարվել է *Ազգերի լիգայի* հիմնադրմամբ (1919): Մ. կ-ի զարգացման գործում մեծ նշանակություն է ունեցել սովետական պետության, ապա սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջացումը: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Մ. կ-ի զարգացման մեջ կարևոր իրադարձություն էր սոցիալիստական պետությունների Մ. կ-ի ստեղծումը (օրինակ, *Տնտեսական փոխօգնության խորհուրդը*):

Գոյություն ունեն տարբեր բնույթի շուրջ 2,5 հզ. Մ. կ., որոնք բաժանվում են երկու հիմնական խմբերի՝ միջպետական և ոչ-կառավարական: Միջպետական կազմակերպությունների անդամ կարող են լինել միայն պետությունները, ոչ-կառավարական կազմակերպությունների անդամ՝ ոչ-կառավարական ասոցիացիաներ, միություններ, միավորումներ, առանձին անձինք: Կախված անդամների թվից, լինում են՝ համընդհանուր (ընդգրկում է բոլոր կամ գրեթե բոլոր պետությունների ներկայացուցիչներին), ռեգիոնալ (տվյալ աշխարհագրական շրջանի պետությունները), ենթառեգիոնալ (աշխարհագրական շրջանի մասը): Կան նաև անդամների թվով ավելի փոքր Մ. կ.: Ըստ անդամների կազմի, լինում են ընդհանուր (սոցիալ-քաղաքական տարբեր կարգ ունեցող պետությունների ներկայացուցիչների կազմով) և միատիպ: Ըստ գործունեության ոլորտի, տարբերում են Մ. կ., որոնք միաժամանակ ընդգրկում են միջազգային համագործակցության տարբեր բնագավառներ (խաղաղության, անվտանգության, տնտ., սոցիալական ևն հարցեր), և Մ. կ., որոնք համագործակցում են հատուկ նշանակության մեկ որոշակի բնագավառում: Մ. կ-ի ստեղծման և գործունեության հիմքում ընկած է հիմնադիր կանոնադրությունը, որը միջազգային պայմանագրի տեսակ է: Սովորաբար Մ. կ-ի բարձրագույն մարմինը ընդհանուր ժողովն է (կոնֆերանսը), կոնֆերանսների միջև ընկած ժամանակաշրջանում՝ նրա ղեկավար գործադիր խորհուրդը (գործադիր կոմիտե, նախագահություն ևն): Յուրաքանչյուր Միջազգային կազմակերպություն ունի մշտական քարտուղարություն՝ Գլխավոր քարտուղարի (դիրեկտորի) ղեկավարությամբ, խորհրդակցական բնույթի օժանդակ մարմիններ՝ հանձնաժողովներ, կոմիտեներ, խորհուրդներ ևն: Խոշոր Մ. կ. (ՄԱԿ, ՏՓԽ, ԵՏՀ ևն) ունեն բարդ ենթահամակարգ, նախատեսվող ծրագրերի մշակման համար հատուկ օժանդակ մարմիններ, ԳՀԻ-ներ: Մ. կ. լուրջ ավանդ են ներդնում միջազգային կարևորագույն հարցերի լուծման գործում: Մ. կ-ի գերակշռող մասի որոշումները (բացառությամբ որոշ կազմակերպությունների, օրինակ, ՄԱԿ-ի *Անվտանգության խորհրդի* բանաձևերը խաղաղության և անվտանգության հարցերով, Առողջապահության համաշխարհային կազմակերպության սանիտարական կանոնակարգերը, ՏՓԽ-ի հանձնարարականները ևն, որոնք պարտադիր կատարման ուժ ունեն) հանձնարարական բնույթի են, անդամների համար պարտադիր կատարման ուժ չունեն: Միջպետական կազմակերպությունների շարքում հատուկ տեղ է զբաղեցնում *Միավորված ազգերի կազմակերպությունը*, որի անդամ են աշխարհի գրեթե բոլոր պետությունները: Նշանակալի հեղինակություն ունեն *Արհմիությունների համաշխարհային ֆեդերացիան*, *Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիան*, *Դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիան* ևն, իսկ ոչ-կառավարական կազմակերպությունների թվում՝ միջպառլամենտական կազմակերպությունները (տես *Միջպառլամենտական միություն*): ՍՍՀՄ ու սոցիալիստական մյուս երկրները աշխարհի բոլոր առաջադեմ ուժերի հետ ակտիվ պայքար են մղում Մ. կ-ի արդյունավետ օգտագործման օգտին՝ հանուն խաղաղության, ժողովուրդների անվտանգության, միջազգային իրավահավասար համագործակցության:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿԱՐՏԵԼ**, առավելագույն շահույթ ստանալու նպատակով իրացման շուկաների և հումքի աղբյուրների բաժանման, մենաշնորհային գների սահմանման, արտոնագրերի օգտագործման և այլ միջոցառումների վերաբերյալ տարբեր երկրների պատկանող (բայց հաճախ մի ճյուղում գործող) մոնոպոլիաների կամ ֆիրմաների համաձայնություն (դաշինք): Միավորում է նաև ազգային *կարտելներ* ու մոնոպոլիստական դաշինքների այլ ձևեր: Մ. կ. կապիտալի և արտադրության համաշխարհային համակենտրոնացման նոր աստիճան է, առաջացել է *իմպերիալիզմի* փուլում: Արդեն 1950-ական թթ. հաշվվում էին տասնյակ հազարավոր Մ. կ-ներ, որոնք հանդես էին գալիս որպես սեփական և այլ երկրների աշխատավորների դեմ ուղղված կապիտալիստների միջազգային (մեծամասամբ գաղտնի) համաձայնություններ, իսկ պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացմամբ՝ կապիտալիստական առանձին երկրների համաձայնություններ՝ ընդդեմ տնտեսության համաշխարհային սոցիալիստական համակարգի: Խոշոր Մ. կ-ներից առավել հայտնի են.

Նավագնացության կարտելները, որոնք հիմնականում ունեն կոն-

ֆերանսի և պուլի ձև: Առաջինի շրջանակներում մասնակիցները պայմանավորվում են փոխադրումների ընդհանուր պայմանների, աշխատանքի շրջանների բաշխման, ծովային փոխադրումների գների, իսկ երկրորդում՝ բեռնա- և ուղևորափոխադրումների, եկամուտների բաշխման մասին ևն: 1960—70-ական թթ. ստեղծվել են կոնսորցիումի ձև ունեցող Մ. կ-ներ: Նավատիրական միևնույն ընկերությունը կարող է տարբեր ուղղություններում գործող միջազգային մի քանի կարտելների մասնակից լինել: Նավագնացային կարտելները սովորաբար կրում են սպասարկվող շրջանի անունը (օրինակ՝ «Յունայթիդ Քինգդոմ Օսթրեյլիա քոնֆերենս»—«United Kingdom-Australia conference» ևն): Դրանք չեն վերացնում կապիտալիստական նավագնացության մեջ մղվող մրցապայքարը և բացասաբար են ազդում միջազգային, հատկապես զարգացող երկրների առևտրի վրա:

*Մեքենաների ու սարքավորումների կարտելները*, որոնք գլխավորապես բնորոշ են էլեկտրատեխնիկական արդյունաբերությանը ու տրանսպորտային մեքենաշինությանը: Առավել խոշորը էլեկտրասարքավորումների կարտելն է (ստեղծվել է 1930-ին), որը 70-ական թթ. սկզբին ընդգրկում էր տարբեր երկրների պատկանող 40 ընկերություն և ըստ սարքավորումների տեսակների՝ ապրանքային 16 բաժանմունք: Կարտելի գործունեությունը հիմնվում է գների, փոխհատուցումների և ծանուցումների (ինֆորմացիա կարտելի բոլոր անդամներին՝ ստացված պահանջների, պատվերների մասին ևն) վերաբերյալ կնքվող համաձայնագրերի վրա: Պաշտոնական մասնակիցների մեջ առավել ուժեղ են անգլ. ֆիրմաների դիրքերը:

Ռադիոսարքերի կարտելը (ստեղծվել է 1925-ին) միավորում է ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի և այլ երկրների մի շարք ընկերություններ, այդ թվում՝ «Ջեներըլ էլեքթրիք» («General Electric»), «Սիմենս» («Siemens») ևն: Էլեկտրոնային հաշվողական մեքենաների շուկայում իշխում են ամերիկյան մոնոպոլիաները:

1969-ին կարտելային համաձայնագիր է կնքվել ավտոմոբիլային երկու խոշոր մոնոպոլիաների՝ ամերիկյան «Քրայսլեր»-ի («Chrysler») և ճապոնական «Միցուբիսի հևի ինդաստրիս»-ի («Mitsubishi Heavy Industries») միջև, որով նախատեսվում է համագործակցել ավտոմեքենաների արտադրության ու հավաքման, նաև տեխնիկայի, առևտրի ու ֆինանսների բնագավառներում: Գրեթե նմանատիպ համաձայնագիր է կնքվել նաև իտալ. «ՖԻԱՏ»-ի («FIAT»), ֆրանս. «Սիտրոյեն»-ի («Citroen») միջև:

Մի շարք դեպքերում մեքենաների միջազգային կարտելները հանդես են գալիս միջազգային ասոցիացիաների (ընդգրկում են մեծ թվով ֆիրմաներ), ֆեդերացիաների, բյուրոների կամ կոմիտեների ձևերով:

*Պարարտանյութերի կարտելները*: Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը պարարտանյութերի համաշխարհային շուկայում առաջատար դեր էին խաղում կալիումի (առաջացել է 1926-ին), ազոտի (1928-ին), ֆոսֆատի (1933-ին) միջազգային կարտելները, որոնք միավորում էին պարարտանյութեր արտահանողներին: Պատերազմից հետո առավելապես հզորացան ԱՄՆ-ի մոնոպոլիաները և սկսեցին վաճառահանման հիմնական շուկաներից դուրս մղել ԳՖՀ-ի, Ֆրանսիայի և Իտալիայի ընկերություններին: 1962-ին Ցյուրիխում (Շվեյցարիա) ստեղծվեց միջազգային ազոտային կարտել, որը միավորում է Արևմտյան Եվրոպայի մայրցամաքային երկրների արտադրողներին: Կարտելի կոորդինացման կենտրոնը «Նիտրեքս» («Nitrex A. G.») բաժնետիրական ընկերությունն է, որը հավաքում է ազոտային պարարտանյութերի մատակարարման բոլոր պատվերները և դրանք բաշխում կարտելի մասնակիցների միջև:

Միջազգային կալիումական կարտելի ֆունկցիաներն իրականացնում են Բեռնի (Շվեյցարիա) միջազգային կալիումական ինստ-ը, որը ներկայացնում է հիմնականում արևմտաեվրոպական ընկերությունների շահերը, և ԱՄՆ-ի 2 կազմակերպությունները՝ Ամերիկյան կալիումական ինստ-ը և կալիումի միջազգային հետազոտությունների ֆոնդը:

Ֆոսֆատների միջազգային կարտելը ետպատերազմյան շրջանում տրոհվել է մի շարք ռեգիոնալ կարտելների, որոնք իրենց գործունեությունը կոորդինացնում են համաշխարհային շուկայի մասշտաբով:

*Քիմիական ապրանքների կարտելներ*: Սոդայի կարտելն առաջացել է 1872-ին, մասնակիցներն են՝ բելգիական «Սոլվե» («Solvay») մոնոպոլիան, ԱՄՆ-ի «Ալկասսո» («Alkasso») ազգային արտահանման կարտելը, անգլ. «Իմփերիըլ քեմիքըլ ինդասթրիս, ԻՔԻ» («Imperial Chemical Industries, ICI») և գերմ. «Ի. Գ. Ֆարբենինդուսթրի» («I. G. Farbenindustrie») քիմ. տրեստները: Կարտելը կարգավորում էր սոդայի արտահանումն աշխարհի բոլոր երկրներ: Անիլինի ներկերի կարտելը (1927) վերահսկում էր կապիտալիստական աշխարհի օրգ. սինթետիկ ներկերի արտադրության ավելի քան 90%-ը: Կարտելում իշխում էր «Ի. Գ. Ֆարբենինդուսթրի»-ն, մասնակցում էին նաև Ֆրանսիայի, Շվեյցարիայի, Իտալիայի, Մեծ Բրիտանիայի, Լեհաստանի ու Ճապոնիայի ընկերությունները:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, քիմ. ապրանքների շուկայում մրցակցության ուժեղացման պատճառով, սկսեցին վերակազմվել մինչպատերազմյան կարտելները, և ստեղծվել նորերը: Քիմ. ապրանքների ընկերությունները միավորվել են միջազգային տարբեր ասոցիացիաներում, գիտահետազոտական կենտրոններում, ստանդարտացման բյուրոներում, ձեռնարկուական ընկերություններում (Թունաքիմիկատներ արտադրողների միջազգային կենտրոն, Լաքի-ներկերի արդյունաբերության ասոցիացիաների եվրոպական կոմիտե ևն):

*Գունավոր մետաղների կարտելներ*: Առավել հայտնի են ալյումինի և պղնձի կարտելները: Մինչև առաջին համաշխարհային պատերազմն ալյումինի շուկայում գործում էր միջազգային երկու կարտել (1901—08 և 1913—1914), 1926-ին ստեղծվեց երրորդը, իսկ 1931-ին (99 տարի ժամկետով)՝ չորրորդը («Ալյանս ալյումինյում քամփընի»), որին մասնակցում են Մեծ Բրիտանիայի, Գերմանիայի, Կանադայի, Ֆրանսիայի և Շվեյցարիայի ալյումինի առավել խոշոր ընկերությունները: Դադարեց գործելուց երկրորդ համաշխարհային պատերազմի սկզբին: 60-ական թթ. սկզբին, ալյումինի համաշխարհային կապիտալիստական շուկայում առաջարկի և պահանջարկի անհամապատասխանության պատճառով, ալյումինի մոնոպոլիաները սկսեցին նորից միավորվել կարտելների մեջ:

Պղնձի միջազգային «Քոփփեր էքսպորտերս ինքորփորեյթիդ» (1926) կարտելը վերահսկում էր կապիտալիստական երկրների պղնձի արտադրության 86%-ը և փաստորեն իշխում «Մետաղների լոնդոնյան բորսայի» վրա: Կարտելի մեջ էին մտնում ամերիկյան և արևմտաեվրոպական առաջատար մոնոպոլիաները, այդ թվում՝ «Ամերիքըն մեթալ քլայմաքս ինքորփորեյթիդ» («American Metal Climax Incorporated»), «Ամերիքըն սմելթինգ էնդ ռիֆայնինգ քամփընի» («American Smelting and Refining Company») ևն: Գոյությունը դադարել է 1929—33-ի տնտ. ճգնաժամի շրջանում: 1935-ին ստեղծվեց պղնձի նոր, եռամյա կարտել, որը վերահսկում էր այդ մետաղի արտադրության 75%-ը: Այն ընդգրկում էր ամերիկյան, անգլ. և բելգ. կապիտալների հսկողության տակ գտնվող պղնձի խոշորագույն ընկերությունները: 1957—58-ի ճգնաժամի հետևանքով պղնձի առաջարկը գերազանցեց պահանջարկը, և առաջատար ընկերությունները պայմանավորվեցին հավասարաչափ կրճատել արտադրությունը: Սակայն հետագայում, պղնձի նկատմամբ պահանջարկի աճի հետևանքով, այդ համաձայնությունը վերացվեց (1966):

*Սև մետաղների կարտելներ*: 1937-ին ստեղծված «Պողպատի միջազգային կարտելը» (ՊՄԿ) իրեն էր ենթարկել պողպատի գրեթե ամբողջ կապիտալիստական շուկան: 1953-ին Ֆրանսիայի, Բելգիայի և Լյուքսեմբուրգի մետալուրգիական մոնոպոլիաները ստորագրեցին «Պողպատի կարտել» կազմակերպելու համաձայնագիրը: Նույն տարում դրան միացան ԳՖՀ-ի ու Նիդերլանդների, հետագայում՝ Բրազիլիայի ու Ավստրալիայի ֆիրմաները:

Սև մետաղների շուկայում կոնյունկտուրայի վատացումը պատճառ դարձավ 1967-ին «Թուջի և պողպատի միջազգային ինստ-ի» (ԹՊՄԻ) ստեղծման համար, որը կարտելի տիպի համաձայնություն է: Պաշտոնական նպատակն է կապիտալիստական տարբեր երկրների պողպատ արդյունաբերողների միջև կապի ամրապնդումը, ինֆորմացիայի փոխանակությունը:

Բացի ընդհանուր կարտելներից կան նաև զլանվածքի առանձին տեսակների կարտելներ՝ խողովակի (գործել է 20-ական թթ. մինչև 1935-ը, 1950-ից՝ որպես «ջենտլմենական» համաձայնություն), ռելսերի (կազմակերպվել է երկրորդ համաշխարհային պատերազմից հետո), սպիտակ

թիթեղի (մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը կար նման մի քանի կարտել, հետագայում կազմակերպվել է «ակումբի» ձևով) են:

Նավթի կարտել: Միավորում է ԱՄՆ-ի «Էքսսոն» («Exxon»), «Սթանդարդ օյլ քամփընի օֆ Քալիֆոռնիա» («Standard Oil Company of California»), «Մոբայլ օյլ» («Mobil Oil»), «Գալֆ օյլ» («Geulf Oil»), «Թեքսաքո» («Texaco»), Մեծ Բրիտանիայի «Բրիթիշ փեթրոլիըմ» («British Petroleum»), անգլո-հոլանդական «Ռոյալ դաչ-Շելլ» («Royal Dutch-Shell») նավթի 7 խոշոր տրեստները, որոնց հետ մի շարք դեպքերում սերտորեն համագործակցում է ֆրանս. «Կոմպանի Ֆրանսեզ դե պետրոլ» («Compagnie Française des petroles») մոնոպոլիան: Կարտելը ձևավորվել է 20-ական թթ. վերջին —30-ական թթ. սկզբին և իր գործունեությունը տարածել կապիտալիստական բոլոր երկրներում ու նավթային տնտեսության բնագավառներում: Կարտելի մեջ մտնող ԱՄՆ-ի նավթի մոնոպոլիաները ամերիկյան, իսկ «Ռոյալ դաչ-Շելլ»-ը՝ անգլո-հոլանդական մասնավոր կապիտալի սեփականությունն են: «Բրիթիշ փեթրոլիըմ»-ի բաժնետոմսերի 49%-ը պատկանում է պետությանը: Այդպիսով, նավթի կարտելը մասնավոր և պետ. մոնոպոլիստական կապիտալի միավորում է, որը մասնակից-երկրների կառավարությունների ուղղակի աջակցությամբ հատկապես ագրեսիվ քաղաքականություն է վարում զարգացող նավթարդյունահանող երկրների նկատմամբ:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո կարտելի անդամների և աութսայդեր-մոնոպոլիաների միջև մրցապայքարի սրման, նավթի և նավթամթերքների հիմնական սպառող արդյունաբերական զարգացած երկրներում պետական-մոնոպոլիստական միավորումների ուժեղացման, զարգացող երկրներում հակաիմպերիալիստական շարժման ծավալման և այլ պատճառներով կապիտալիստական ու զարգացող երկրների նավթային տնտեսութ. մեջ կարտելի բաժինը փոքրացել է:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՆՎԵՆՑԻԱՆԵՐ**, տես *Պայմանագիր միջազգային*:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՈՊԵՐԱՏԻՎ ԱԼՅԱՆՍ (ՄԿԱ)**, միջազգային կազմակերպություն, որ միավորում է կոոպերատիվների (հիմնականում սպառողական, վարկային, գյուղատնտեսական) ազգային, ռեգիոնալ միություններ ու ֆեդերացիաներ: Հիմնադրվել է 1895-ին, Լոնդոնում: 1979-ի սկզբին միավորում էր 65 երկրի կոոպերատիվ կազմակերպություններ: Նպատակն է՝ աջակցել բոլոր երկրներում կոոպերացիաների զարգացմանը, պրոպագանդել կոոպերատիվ շարժման սկզբունքներն ու մեթոդները, պաշտպանել նրա շահերը, ընդլայնել տարբեր երկրների կոոպերատիվների տնտ. կապերը են: ՄԿԱ-ի ղեկավար մարմիններն են Կոնգրեսը, Կենտրոնական կոմիտեն, Գործադիր կոմիտեն: Ընթացիկ աշխատանքները ղեկավարում են դիրեկտորն ու քարտուղարությունը: Սպառողական ընկերությունների Մոսկվայի կենտրոնական միությունը ՄԿԱ-ին անդամագրվել է 1903-ին, Ցենտրոսոյուզը՝ 1921-ին:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՇՎԱՐԿՆԵՐ**, դրամական հաշվարկներ տարբեր երկրների ձեռնարկությունների, հիմնարկությունների, բանկերի, առանձին անձանց միջև: Կապված են արտաքին առևտրի, վարկերի, կապիտալի երկարաժամկետ ներդրումների, տրանսպորտային ծառայությունների, տուրիզմի, արտասահմանում գտնվող դիվանագիտական ներկայացուցիչների ապահովման, պահպանման, գործուղումների, պատվիրակությունների ուղևորությունների, ինչպես նաև միջոցների արտասահմանյան այլ բնույթի փոխանցումների (շահույթի, հոնորարի, ալիմենտի են) հետ: Մ. հ-ի հիմնական միջոցներն են՝ վճարման ու գանձման հանձնարարականները, *չեկերը*, փոխանցվող *մուրհակները* (տրատտա), *ակրեդիտիվները*: Կապիտալիստական երկրների միջև փոխադարձ հաշվարկները կատարվում են կապիտալիստական գլխավոր պետությունների վալյուտաներով:

Սոցիալիստական երկրների Մ. հ. հենվում են տնտ. համագործակցության պլանային ու երկարաժամկետ ձևերի զարգացման վրա: 1964-ի հունվ. 1-ից ՏՓԽ-ի անդամ-երկրների միջև հաշվարկներն իրականացվում են *փոխանակային ռուբլով*՝ Տնտ. համագործակցության միջազգային բանկի և Միջազգային ինվեստիցիոն բանկի միջոցով: Սոցիալիստական երկրների Մ. հ. կապիտալիստական պետությունների հետ կատարվում են վճարման երկկողմ համաձայնությունների հիման վրա (որոնցով սահմանվում են հաշվարկների կատարման կարգը, հաշվարկային վալյուտան, հաշիվների վարման ռեժիմը են), իսկ զարգացող երկրների հետ՝ հիմնականում անկանխիկ հաշվարկների համակարգով (*քլիրինգ*), ինչպես նաև զուտ վճարային ու խառը՝ վճարային-քլիրինգային բնույթի համաձայնություններով:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՇՎԱՐԿՆԵՐԻ ԲԱՆԿ (ՄՀԲ)** (Bank for International Settlements-BIS), ստեղծվել է 1930-ին, Բազելում (Շվեյցարիա): Անդամներն են՝ եվրոպական կապիտալիստական և սոցիալիստական (բացի ՍՍՀՄ-ից և ԳԴՀ-ից) երկրների, Թուրքիայի, ՀԱՀ-ի, Ճապոնիայի, Ավստրալիայի, Կանադայի կենտրոնական ու ԱՄՆ-ի մի խումբ մասնավոր բանկեր: Ըստ կանոնադրության ՄՀԲ կոչված է նպաստելու կենտրոնական բանկերի համագործակցությանը, լրացուցիչ բարենպաստ պայմաններ ապահովելու միջազգային ֆինանսական գործառնությունների համար, ինչպես նաև գործելու որպես միջազգային ֆինանսական միջոցառումների իրականացման հավատարմատար կամ գործակալ: Ըստ ձևի *բաժնետիրական ընկերություն* է: Իր կամ կենտրոնական բանկերի հաշվին գնում, վաճառում և պահում է ոսկի, արժույթ, շրջանառող արժեթղթեր (բացի բաժնետոմսերից), փոխատվություններ է տալիս կենտրոնական բանկերին և ընդունում ավանդներ նրանցից:

ՄՀԲ-ի բարձրագույն մարմինն ամենամյա ընդհանուր ժողովն է, որի աշխատանքներին մասնակցում են բաժնետեր-երկրների կենտրոնական բանկերի ներկայացուցիչները (ձայները համապատասխանում են բաժնետոմսերի թվին): Ընթացիկ գործերը ղեկավարում է դիրեկտորների խորհուրդը, որն ընտրում է խորհրդի նախագահ ու փոխնախագահ, ՄՀԲ-ի պրեզիդենտ (3 տարով):

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՄԱՍՆԱՎՈՐ ԻՐԱՎՈՒՆՔ**, իրավունքի նորմերի ամբողջություն, որով կարգավորվում են միջազգային բնույթի քաղաքացիա-իրավական հարաբերություններ (գույքային, դրան առնչվող ոչ գույքային, ինչպես նաև ընտանեկան, աշխատանքային և դատավարական իրավահարաբերություններ): Իրավահարաբերությունների մասնակիցները կամ արտասահմանցիներ են, արտասահմանյան իրավաբանական անձինք ու պետություններ, կամ իրավահարաբերությունների օբյեկտը արտասահմանում գտնվող գույքն է: Առաջին հերթին կարգավորում է պետությունների տնտ., գիտատեխնիկական համագործակցության ընթացքում ծագած հարաբերությունները: Մ. մ. ի-ի բնագավառին են վերաբերում օտարերկրացիների, օտարերկրյա իրավաբանական անձանց ու խառը ընկերությունների իրավական դրության համապատասխան հարցերը, սեփականության իրավունքը, պարտավորական իրավունքը (արտաքին առևտրական գործարքներ, տեխ. օգնության պայմանագրեր, գիտատեխնիկական և այլ աշխատանքների կատարում), ծովային, երկաթուղային-ավտոմոբիլային և օդային փոխադրումների պայմանագրեր, վարկ-հաշվարկային հարաբերություններ, հեղինակային և գյուտարարական իրավունքի, ընտանեկան և ժառանգման իրավունքի, քաղաքացիական դատավարական (օտարերկրյա պետությունների դատավարական իրավունքներ, դատական հանձնարարություններ, օտարերկրյա դատական որոշումների կատարում, արտաքին առևտրի և ծովային իրավարարություն) հարցերը: Մ. մ. ի-ի նորմերը կամ ուղղակի սահմանում են որոշակի իրավունքներ ու պարտականություններ, կամ մատնանշում, թե որ պետության օրենքով (այսպես կոչված, կոլիզիոն նորմ) կարող է կարգավորվել տվյալ հարաբերությունը: Որքանով կոլիզիոն նորմերի տեսակարար կշիռը մեծ է, Մ. մ. ի. երբեմն կոչում են կոլիզիոն իրավունք: Մ. մ. ի. սերտորեն առնչված է միջազգային (հանրային) իրավունքի հետ: Հաճախ Մ. մ. ի-ի նորմերը բխում են *հանրային իրավունքի* ընդհանուր սկզբունքներից: Օրինակ, ըստ պետությունների սուվերեն իրավահավասարության սկզբունքի, գործը կարող է ընդդատյա լինել այս կամ այն պետության դատական մարմին միայն մյուս պետության համաձայնությամբ: Մ. մ. ի-ի նորմերի մի մասն ամփոփված է ներպետական նորմերում, մյուսը՝ միջազգային պայմանագրերում ու սովորույթներում: Մ. մ. ի-ի սուբյեկտներ կարող են լինել ինչպես պետությունները, այնպես էլ քաղաքացիներն ու իրավաբանական անձինք: ՍՍՀՄ-ում Մ. մ. ի-ի նորմերն ամփոփված են ՍՍՀՄ արտաքին առևտրի պետ. մենաշնորհի մասին օրենսդրությունում, ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների քաղաքացիական օրենսդրության հիմունքներում, ամուսնության և ընտանիքի օրենս-

դրության հիմունքներում, քաղաքացիական դատավարության հիմունքներում, ՍՍՀՄ առևտրական ծովագնացության օրենսգրքում, ՍՍՀՄ օդային օրենսգրքում, Հայտնագործությունների գյուտարարական և ռացիոնալիզատորական առաջարկությունների կանոնադրությունում են: Սոցիալիստական մյուս պետությունների հետ հարաբերություններում Մ. մ. ի-ի կարևոր նորմեր են ճանաչվում միջազգային համաձայնագրերը:

*Գրկ.* Перетерский И. С., Крылов С. Б., Международное частное право, М., 1959; Лунц Л. А., Международное частное право, М., 1970.

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՄՈՄ**, *լույսի ուժի*՝ զործածությունից դուրս եկած միավոր. հավասար է այն կետային աղբյուրի լույսի ուժին, որը բոլոր ուղղություններով հավասարաչափ ճառագայթելիս, 1 *ստեռ-ի* հավասար մարմնային անկյան ներսում առաջացնում է 1 *լմ* հավասարաչափ լուսային հոսք: 1 Մ. մ-ի առաջացրած լրիվ հոսքը հավասար է 4 π *լմ*: Մ. մ. սահմանվել է 1909-ին և կիրառվել 1921-ից (ՍՍՀՄ-ում՝ 1925-ից): 1948-ին Մ. մ. փոխարինվել է մոմ միավորով (1 Մ. մ.= = 1,005 մոմ), վերջինս էլ՝ *կանդելայով* (1967):

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՄՈՆՈՊՈԼԻԱՆԵՐ** մ ա ս ն ա վ ո ր, արտասահմանում ակտիվներ ունեցող կապիտալիստական խոշորագույն ֆիրմաներ կամ տարբեր երկրների պատկանող ֆիրմաների միություններ, որոնք առավելագույն շահույթ ստանալու նպատակով իշխում են համաշխարհային կապիտալիստական տնտեսության մեկ կամ մի քանի ոլորտներում: Առաջացման և զարգացման տնտ. հիմքը կապիտալիստական արտադրության հանրայնացման բարձր աստիճանն ու տնտ. կյանքի միջազգայնացումն է: ՄԱԿ-ի տվյալներով, 1970-ական թթ. 300 խոշորագույն Մ. մ. կենտրոնացրել էին զարգացած կապիտալիստական երկրների համախառն ազգային արդյունքի 22%-ը: Ըստ գործունեության ոլորտի Մ. մ. բաժանվում են երկու խմբի՝ տվյալ երկրի ազգային տրեստներ ու կոնցեռններ, որոնք ակտիվներ ունեն արտասահմանում (անդրազգային մոնոպոլիաներ), և կապիտալիստների միջազգային միություններ (գերմոնոպոլիաներ), որոնք ներառում են երկու կամ ավելի երկրների խոշոր կապիտալին պատկանող միջազգային տրեստներ, կոնցեռններ ու միջֆիրմային միություններ (կարտելներ ու սինդիկատներ, մոնոպոլիստական միավորումներ):

Անդրազգային մոնոպոլիաներն ըստ կապիտալի և վերահսկողության ազգային են, իսկ ըստ գործունեության ոլորտի՝ միջազգային: Առավելապես տարածվել են XX դ. կեսերին: Արտասահմանում ունեն ապրանքների արտադրության և իրացման սեփական խիստ ճյուղավորված ցանց: Արտաքին տնտ. էքսպանսիան իրականացնում են այլ երկրներում արտադրություն կազմակերպելու ուղիով, կապիտալը ներդնում են ոչ թե որևէ կոնկրետ ապրանքի արտադրության մեջ, այլ տնտեսության տարբեր ճյուղերում ու ոլորտներում, մեծ մասամբ կամ հիմնականում իրենց գործունեությունն իրականացնում են արտասահմանում: Այդպիսի մոնոպոլիաներից են ամերիկյան «Էքսսոն»-ը, շվեյցարական «Նեսթլե»-ն ևն: Անդրազգային մոնոպոլիաների աճող դերի մասին է վկայում «արտաազգային» արտադրանքի ծավալի արագ ավելացումը (1970-ական թթ. տարեկան 300 մլրդ դոլլար կամ կապիտալիստական աշխարհի համախառն արդյունքի մոտ 11%-ը):

Միջազգային տրեստներն ու կարտելներն առաջացել են XX դ. սկզբին: Դրանց կարևորագույն առանձնահատկությունը բաժնետիրական կապիտալի միջազգային տարակենտրոնացումն ու մոնոպոլիաների բազմազգ կազմն է: Այդպիսին են, օրինակ, անգլո-հոլանդական «Յունիլեվըր» և «Ռոյալ դաչ-Շելլ» կոնցեռնները: Դրանք միավորվում են հետևյալ հիմնական ձևերով. տարբեր երկրների մոնոպոլիաների համատեղ ընկերության (ինքնուրույն տրեստ կամ կոնցեռն) կազմակերպում, ազգային տրեստի (կոնցեռնի) կողմից օտարերկրյա մոնոպոլիայի բաժնետոմսերի հսկիչ ծրարի մի մասի գնում, տարբեր երկրների ֆիրմաների ակտիվների անմիջական կամ մոնոպոլիաների կեղծ միաձուլում (իրականացվում է իրավաբանորեն անկախ ֆիրմաների միջև բաժնետոմսերի փոխանակության, դրանց համատիրության և այլ ուղիներով): Գերմոնոպոլիաները սովորաբար բաժանում են տվյալ ապրանքի համաշխարհային կամ ռեգիոնալ շուկան: Բաժանման պայմանագրերի ընդունված ձևը կարտելային տիպի համաձայնությունն է (տես *Միջազգային կարտել*): Հաճախ դրանք գաղտնի բնույթ են կրում և կնքվում են «ջենտլմենական համաձայնությամբ»:

Առավելագույն շահույթ կորզելու պայքարում Մ. մ. երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ավելի ու ավելի են օգտագործում ազգային ու օտարերկրյա պետ. ապարատը, որի հիմքի վրա ձևավորվում են պետական-մոնոպոլիստական միավորումների տարբեր ձևեր՝ քարածխի և պողպատի եվրոպական միավորում (1951), *Եվրոպական տնտեսական համագործակցություն* (1957), *Եվրատոմ* (1957) ևն: Սակայն այդ պրոցեսը միջիմպերիալիստական նոր հակասությունների առաջացման ու խորացման պատճառ է դառնում, մոնոպոլիաների միջև ծնում աշխարհի տնտ. բաժանման («ըստ ուժի» և «ըստ կապիտալի») անլուծելի պրոբլեմներ: Մոնոպոլիաների միջազգային համաձայնությունները հաճախ դադարեցվում են, և սկսվում է բացահայտ պայքարը: Համաշխարհային կապիտալիստական շուկայում Մ. մ-ի լիիշխանությանը դիմակայում են արդիականության երեք կարևորագույն գործոնները՝ համաշխարհային սոցիալիստական համակարգը, միջազգային բանվորական շարժումը և ազգային-ազատագրական պայքարը:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՆԵՂՈՒՑՆԵՐ**, համաշխարհային ջրային ուղիների նշանակություն ունեցող այն նեղուցները, որոնք միացնում են *բաց ծովերը*: Մ. ն. են Բոսֆորի և Դարդանելի, Ջիբրալթարի, Մագելանի, Սանգայի, Կորեական նեղուցները ևն: Ռեժիմի հիմքում դրված է բաց ծովերի ազատության սկզբունքը, ըստ որի բոլոր պետությունների առևտրական և ռազմ. նավերի համար այդպիսի նեղուցներով նավարկությունն ազատ է: Ներքին ծովը փակ կամ բաց ծովի հետ միացնող նեղուցների ռեժիմը կարգավորվում է այնպես, ինչպես ներքին ջրերի ռեժիմը (օրինակ, Կերչի նեղուցը): Հատուկ իրավական ռեժիմ է սահմանված փակ ծովերը բաց ծովերի հետ միացնող նեղուցների համար (տես *Սևծովյան նեղուցների ռեժիմ*, *Բալթիական նեղուցներ*). *Ա. Եսայան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՋՐԱԲԱՆԱԿԱՆ ՏԱՍՆԱՄՅԱԿ (ՄՋՏ)**, ջրաբանական դիտարկումների կատարելագործման միջազգային համագործակցության ժամանակաշրջան (1965—74): Գործունեության ծրագիրը հաստատել էր ՅՈՒՆԵՍԿՕ-ն, 1964-ին: Ընդգրկում էր գիտական, տեխ., գործնական պրոբլեմներ և նախագծեր: Զգալի դեր խաղաց մասնագետ կադրերի պատրաստման, գիտական ինֆորմացիայի փոխանակման, նյութերի հրապարակման, ջրաբանական ընդհանրացումներ կատարելու բնագավառում: ՄՋՏ-ին հաջորդել է Միջազգային ջրաբանական ծրագիրը (ՄՋԾ) (1975—80), որի նպատակն է ջրային հաշվեկշռի կոմպլեքսային հետազոտումը և ջրային ռեսուրսների գնահատումն ըստ ազգային, տեղական և համընդհանուր ծրագրերի: ՄՋՏ-ին մասնակցում էր 100 երկիր, այդ թվում նաև ՍՍՀՄ-ը:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՋՐԱՆՑՔՆԵՐ**, ծովային տարածությունները միացնող և միջազգային նավարկության համար օգտագործվող ջրային արհեստական ուղիներ: Ծովային նավարկության ուղիները կրճատելու շնորհիվ խոշոր դեր են խաղում միջազգային ծովային առևտրում ու ծովագնացության մեջ: Ունեն ռազմա-ստրատեգիական կարևոր նշանակություն (օրինակ, Քիլի ջրանցքը, *Սուեզի ջրանցքը*, *Պանամայի ջրանցքը*): Համարվում են այն պետության տերիտորիայի անբաժանելի մասը, որով անցնում են, ենթարկվում են տվյալ պետության իրավասությանը՝ հաշվի առնելով դրանց միջազգային իրավական ռեժիմը: Մ. ջ. կարող են վարձով տրվել այս կամ այն պետությանը: Մ. ջ-ով նավարկելու իրավական ռեժիմը կարգավորվում է միջազգային կոնվենցիաներով: Ըստ այդ ռեժիմի, նավարկության իրավունքը բոլոր պետությունների համար ազատ է, նավարկող պետությունները պարտավորվում են հարգել այն պետության իրավունքները, որի տերիտորիայով անցնում է ջրանցքը, զինված բախման դեպքում Մ. ջ. զերծ պահել ռազմ. գործողությունների ոլորտից, վճարել նավարկության համար սահմանված տուրքը:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՌԱԶՄԱԿԱՆ ՏՐԻԲՈՒՆԱԼ**, միջազգային դատական ատյան, որն ստեղծվել էր երկրորդ համաշխարհային պատերազմի գլխավոր հանցագործներին պատժելու համար: Մ. ռ. տ. ստեղծելու անհրաժեշտությունն ազդարարվել է 1943-ին՝ հիտլերականներին պատասխանատվության ենթարկելու մասին ՍՍՀՄ-ի և նրա դաշնակիցների համատեղ դեկլարացիայով: Դրան համապատասխան, 1945-ի օգոստ. 8-ին ՍՍՀՄ-ի, ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի միջև Լոնդո-

նում կնքված համաձայնագրով ստեղծվեց Մ. ռ. տ.: Մ. ռ. տ-ում ընդգրկվել էին այդ երկրներից մեկական անդամ՝ իրենց տեղակալներով և գլխավոր մեղադրող: Գլխավոր հանցագործների քննության ու մեղադրման իրավունքը վերապահված էր մեղադրող կողմերին: Տես *Նյուրնբերգյան դատավարություն*, *Տոկիոյի դատավարություն*:

*Ա. Ենայան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՍԱՆԻՏԱՐԱԿԱՆ ՀԱՄԱՁԱՅՆԱԳԻՐ**, պետությունների միջև կնքվող և վավերացվող իրավական փաստաթուղթ, որի հիմնական նպատակն է փոխադարձ պայմանավորվածությամբ անցկացնել վտանգավոր, կարանտինային հիվանդությունների (ժանտախտ, խոլերա, բնական ծաղիկ, դեղին տենդ) ներթափանցումը կանխող միջոցառումներ: Միջազգային սանիտարական համաժողովները և դրանցում ընդունված համաձայնագրերը լայն զարգացում են ստացել XIX դ.:

1851-ին Փարիզում կայացել է համաճարակների դեմ պայքարի առաջին միջազգային կոնֆերանսը, իսկ 1892-ին, հերթական համաժողովում, ընդունվել է Մ. ս. հ.: 1851—1951-ին տարբեր պետությունների նախաձեռնությամբ հրավիրվել են միջազգային սանիտարական ավելի քան 20 համաժողովներ, որոնցում ընդունվել և վավերացվել են 13 Մ. ս. հ.:

1907-ին Հռոմի միջազգային սանիտարական կոնֆերանսում ստեղծվել է առաջին Միջազգային սանիտարական կազմակերպությունը՝ Հասարակական հիգիենայի միջազգային բյուրոն, որը գործել է Փարիզում՝ 1909—46-ին: Դրա հիմնական խնդիրն էր. հետևել Մ. ս. հ-երի պահանջների, կարանտինային կանոնների կատարմանը, հաղորդել տեղեկություններ կարանտինային հիվանդությունների համաճարակային վիճակի մասին և երկրներին տեխ. ու կոնսուլտատիվ օգնություն ցույց տալ: ՍՍՀՄ-ը Մ. ս. հ-ի մասնակից է 1926-ից: 1923-ին Ազգերի լիգայի կազմում հիմնվել է հիգիենայի սեկցիա, որը կատարել է Միջազգային բյուրոյի պարտականությունները և նպաստել նաև գիտական պրոբլեմային հարցերի ուսումնասիրությանը: 1948-ին, Միավորված ազգերի կազմակերպության Գլխավոր ասամբլեայի որոշմամբ, ստեղծվել է Միջազգային առողջապահական նոր կազմակերպություն (տես *Առողջապահության համաշխարհային կազմակերպություն*), որն ստանձնել է Միջազգային բյուրոյի և Ազգերի լիգայի հիգիենայի սեկցիայի պարտականությունները:

*Ա. Մայրապետյան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՍՈՎՈՐՈՒՅԹ**, նորմեր, որոնք ձևավորվել են պետությունների միջազգային պրակտիկայում երկարատև կրկնվելու հետևանքով: Իրավաբանական ուժ են ձեռք բերում պետությունների կողմից ճանաչվելուց հետո և դառնում *միջազգային իրավունքի* աղբյուր: Պետությունների պրակտիկայում պատահում են նաև երկարատև կրկնվող այնպիսի համանման գործողություններ, որոնք պարտադիր իրավական ուժ չունեն (քաղաքավարական, բարոյական կանոններ): Դրանց անտեսումը դիտվում է որպես անբարյացակամ ակտ:

*Ա. Ենայան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՎԱԼՅՈՒՏԱՅԻՆ ՖՈՆԴ**, ՄԱԿ-ի մասնագիտացված հաստատություն. նպատակն է նպաստել արտաքին առևտրի զարգացմանը, պետությունների վալյուտային համագործակցությանը, տրամադրել անդամ-պետություններին օտարերկրյա վալյուտա, պահպանել նրանց վճարման հաշվեկշիռների հավասարակշռությունը, կարգավորել վալյուտային կուրսը: Հիմնադրվել է 1944-ին, գործում է 1947-ից: Ընդգրկում է 138 պետություն (1980): Փաստորեն վերահսկում է ԱՄՆ, որը ձգտում է նրա գործունեությունն օգտագործել դոլլարի դիրքերն ամրապնդելու համար: Մ. վ. ֆ-ի ընդհանուր գումարը կազմվում է անդամ-պետությունների մուծումներից (քվոտաներից): 1977—1978-ին այն կազմել է 38789 մլն ՓՀԻ («Փոխառության հատուկ իրավունքներ»՝ պայմանական միավոր, որի արժեքը որոշվում է կապիտալիստական առաջատար երկրների վալյուտաներով): ԱՄՆ-ի մուծումը 8405 մլն է, Մեծ Բրիտանիայինը՝ 2925, ԳՖՀ-ինը՝ 2156 մլն են: Մ. վ. ֆ-ում ձայները բաշխվում են ըստ մուծումների: Յուրաքանչյուր անդամ-պետություն ունի 250, գումարած ամեն 100 հզ. ՓՀԻ-ի դիմաց 1 ձայն: Մ. վ. ֆ-ի գլխավոր մարմինը կառավարիչների խորհուրդն է, գործադիր մարմինը՝ դիրեկտորատը, որն զբաղվում է ընթացիկ հարցերով: Մ. վ. ֆ-ի մարմինները գտնվում են Վաշինգտոնում: ՍՍՀՄ Մ. վ. ֆ-ի անդամ չէ: Սոցիալիստական երկրներից անդամակցում են Ռումինիան և Հարավսլավիան:

*Ա. Ենայան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԿ**, կապիտալիզմի պայմաններում՝ միջազգային տնտ. հարաբերությունների ոլորտում փոխատվական կապիտալի շարժման ձև. վերադարձման, ժամկետայնության, տոկոսի վճարման պայմաններով վալյուտային ու ֆինանսական ռեսուրսների տրամադրում: Լայն տարածում է ստացել իմպերիալիզմի փուլում: Կատարում է մի շարք ֆունկցիաներ. խթանում է ապրանքների ու ծառայությունների արտահանումը, նպաստավոր պայմաններ է ստեղծում օտարերկրյա մասնավոր կապիտալի երկարաժամկետ ներդրման համար, պարտապան-երկրներից տոկոսի ձևով շահույթի կորզման գործիք է ծառայում, նպաստում այդ երկրներում արտասահմանյան մոնոպոլիաների կամակատար տնտ. և քաղ. ռեժիմներ հաստատելուն: Ըստ վարկավորման օբյեկտի տարբերում են ապրանքային (տրամադրում են գնորդները) և ֆինանսական (տրամադրում են փոխատու-բանկերը), ըստ տնտ. բովանդակության՝ առևտրական (կապված արտաքին առևտրական գործառնությունների հետ) ու ֆինանսական (կարող են օգտագործվել ցանկացած նպատակներով), ըստ վերադարձման ժամկետների՝ կարճաժամկետ (մինչև 1 տարի), միջին ժամկետի (1-ից մինչև 5—7 տարի) ու երկարաժամկետ (5—7 տարուց ավելի) *վարկեր*: Մ. վ. տրամադրում են մասնավոր ֆիրմաները, բանկերը, միջնորդները, կառավարությունները, միջազգային ֆինանսական կազմակերպությունները (օրինակ, *Վերակառուցման և զարգացման միջազգային բանկ*, *Միջազգային վալյուտային ֆոնդ*, Զարգացման միջամերիկյան բանկ են):

Միջազգային սոցիալիստական վարկը ժամանակավոր օգտագործման համար ապրանքային կամ դրամական ռեսուրսների փոխադարձ տրամադրումն է՝ վերադարձման պայմանով և որոշակի վճարով (տոկոս): Երկրների միջև վարկային հարաբերությունների սկզբունքներն են՝ սոցիալիստական ինտերնացիոնալիզմը, հավասարությունը, սուվերենությունը, փոխշահավետությունը, ընկերական փոխօգնությունը: Մ. վ. ներառում է վարկերն ըստ *քլիրինգի*, *Միջազգային ինվեստիցիոն բանկի* (ՄԻԲ) վարկերը՝ ձեռնարկությունների ու կառույցների շինարարության համար, *Տնտեսական համագործակցության միջազգային բանկի* (ՏՀՄԲ) վարկերը՝ արտաքին վարկավորման համար: ՏՀՄԲ և ՄՀԲ վարկավորում են (տոկոսային դրույքները համապատասխանաբար՝ 2—5 և 4—6%) *փոխանակային ռուբլով* ու ազատ շրջանառող վալյուտայով: Սոցիալիստական Մ. վ. հանդես է գալիս հիմնականում 3 ձևով՝ ապրանքային, ինվեստիցիոն, վալյուտային (դրամական): Ապրանքային վարկերը տրամադրվում են սովորաբար կարճ և միջին ժամկետներով, արդ., պարենային և այլ ապրանքների մատակարարման ձևով, ինվեստիցիոնը՝ խոշոր օբյեկտների շինարարության համար անհրաժեշտ սարքավորումների ու արդ. ձեռնարկությունների համալիր մատակարարման, նախագծային աշխատանքների վճարման, իսկ վալյուտային վարկերը՝ ազատ շրջանառող վալյուտայով կամ ոսկով համաշխարհային կապիտալիստական շուկայում անհրաժեշտ ապրանքներ ձեռք բերելու և այլ նպատակներով: Սոցիալիստական Մ. վ. կրում է արտադրողական և նպատակային բնույթ, տրամադրումը, օգտագործումն ու մարումը նախատեսվում են վարկատու-երկրի և փոխառու-երկրի ժողտնտեսության պլաններում ու պետ. բյուջեում: Խոշոր վարկատու-երկրներ են ՍՍՀՄ, ՉՍՍՀ, ԳԴՀ: Սոցիալիստական երկրները զարգացող պետություններին վարկեր են տրամադրում տնտ. ու տեխ. օգնության ու արտաքին առևտրի ֆինանսավորման նպատակով, առանց ռազմաքաղաքական որևէ պայմանի, 10—15 և ավելի տարի ժամկետով, համեմատաբար ցածր՝ տարեկան 2,5% վճարով: Սոցիալիստական երկրները վարկային համակարգով կապված են նաև զարգացած կապիտալիստական պետությունների հետ, սակայն ստացված փոխառություններն էական դեր չեն կատարում ժողտնտեսության զարգացման համար:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆ**, առանձին երկրների, երկրների խմբերի, համաշխարհային սոցիալիստական ու կապիտալիստական համակարգերի միջև ու դրանց ներսում զարգացող տնտեսական կապերի ամբողջություն: Իրականացվում է անկախության, իրավահավասարության և կողմերի փոխադարձ շահավետության սկզբունքներով: Հիմքը աշխատանքի միջազգային բաժանման խորացումն է:

Կապիտալիստական երկրների Մ. տ. հ. առանձին մոնոպոլիաների և մոնոպոլիս-

տական միությունների միջև միջազգային արտադրական կապերի, միջպետական տնտ. միավորումների (օրինակ, *Եվրոպական տնտեսական համագործակցություն*) բարդ ու համակողմանի համակարգ է (տես *Համաշխարհային կապիտալիստական շուկա*): Տնտ. կապերն իրագործվում են կապիտալների միջազգային շարժի, արտաքին առևտրի, աշխատուժի միջազգային միգրացիայի և արժույթային հարաբերությունների (տես *Միջազգային վարկ*) ձևերով՝ երկրների մրցապայքարի, անհաշտելի հակասությունների խորացման, անհամաչափ զարգացման, համաշխարհային սոցիալիստական համակարգի հզորացման, զարգացող երկրների տնտեսության վերելքի պայմաններում: Արդ.զարգացած կապիտալիստական երկրները հարստանում են կախյալ և նախկին գաղութային պետությունների շահագործման հաշվին: Զարգացած կապիտալիստական և զարգացող երկրների տնտ. կապերը ձևավորում են մի կողմից *նեոգաղութատիրության*, զարգացող երկրները մոնոպոլիստական կապիտալիզմի ազդեցության ոլորտում պահելու, մյուս կողմից՝ գաղութային համակարգի մնացորդներից, տնտ. կախվածությունից ազատագրվելու և սեփական ինդուստրիա ստեղծելու համար մղվող պայքարում:

Համաշխարհային տնտեսության երկու համակարգերը զարգանում են միջազգային տնտ. կապերի մեջ, որոնք իրագործվում են այդ համակարգերի միջև դասակարգային և գաղափարական անհաշտելի հակասությունների պայմաններում: Նրանց տնտ. համագործակցության գլխավոր ձևն արտաքին առևտուրն է, կապված են նաև շինարարական, գիտատեխնիկական, արժութա-վարկային և այլ հարաբերություններով: Հասարակական տարբեր կարգ ունեցող երկրների խաղաղ գոյակցության քաղաքականությունը նպաստում է տնտ. կապերի բարենպաստ զարգացմանը: Իր հերթին այդ կապերի զարգացումը երաշխիք է դառնում կայուն և երկարատև խաղաղության համար: Մ. տ. հ-յան կարևորագույն ոլորտ են սոցիալիստական և զարգացող երկրների տնտ. կապերը, որոնք ընդգրկում են արտաքին առևտուրը, վարկերի տրամադրումը, շինարարությունը, որակյալ կադրերի պատրաստումը ևն: ՍՍՀՄ արտաքին առևտրի շրջանառության ծավալը զարգացած կապիտալիստական երկրների հետ 1979-ին կազմել է 25,7 (1950-ին՝ 0,4), զարգացող երկրների հետ 9,5 մլրդ ռ. (1950-ին՝ 0,1 մլրդ ռ.): ՍՍՀՄ աջակցությամբ զարգացող երկրներում կառուցվել է 1069 ձեռնարկություն:

Որակական նոր զարգացում է ստանում սոցիալիստական երկրների Մ. տ. հ. (տես *Համաշխարհային սոցիալիստական շուկա*): Տնտ. կապերն առավել բազմակողմանի են հատկապես *Տնտեսական փոխօգնության խորհրդի* անդամ-երկրների միջև, որոնք զարգանում են սոցիալիստական տնտ. *ինտեգրացման* լայն ու համակողմանի ծրագրերի իրականացման ուղիով: Սոցիալիստական երկրների Մ. տ. հ. ընդգրկում է համատեղ պլանային գործունեությունը, արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը, գիտահետազոտական կապերը, արդ. և տրանսպորտային օբյեկտների համատեղ կառուցումն ու շահագործումը, ապրանքափոխանակությունն ու *միջազգային հաշվարկները*: Այն բխում է աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման խորացման պահանջներից և իրականացվում ՏՓԽ-ի անդամ-երկրների ժողտնտեսական պլանների կոորդինացման ու համատեղ ընդհանուր պլանկանխագծումների մշակման ուղիով: Արտադրության միջպետական մասնագիտացումն ու կոոպերացումը հատկապես ընդգրկում են մեքենաշինության, քիմ., փայտամշակման և արտադրության այլ բնագավառներ: Տնտ. ինտեգրացման զարգացմանը զուգընթաց համագործակցությունը կենտրոնացվում է գիտատեխնիկական առաջընթացի նոր պրոբլեմների համատեղ մշակման բնագավառում: 1976—80-ին համատեղ մշակվել է ավելի քան 250 պրոբլեմ: Համակողմանի հիմքով գիտատեխնիկական համագործակցությանը մասնակցել է ՏՓԽ-ի անդամ-երկրների գիտահետազոտական 1600 կազմակերպություն, գիտական կոորդինացիոն 53 կենտրոն և միջազգային գիտական այլ կոլեկտիվներ: 1957-ից ՏՓԽ-ի անդամ-երկրների միջև երկկողմանի և բազմակողմանի խոշոր համաձայնագրեր են կնքվում վարկային մասնակցությամբ արդ. և տրանսպորտային օբյեկտներ կառուցելու, արդ. առանձին ճյուղեր զարգացնելու վերաբերյալ: Այդպիսի համագործակցության օրինակ կարող են ծառայել ածխի, պղնձի և ծծմբի արտադրության զարգացումը Լեհաստանում, կալիումական աղերինը՝ Բուլղարիայում, նիկելինը՝ Կուբայում, էլեկտրակայանների գործարկումը Ռումինիայում, Ուստ-Իլիմսկի թաղանթանյութի-թղթի համալիրի, Կիեմբաևսկի հանքահարստացուցիչ կոմբինատի, Օրենբուրգ—ՍՍՀՄ արմ. սահման գազամուղի կառուցումը ՍՍՀՄ-ում, «Դրուժբա» նավթամուղի կառուցումը և «Միր» միացյալ էներգահամակարգի ստեղծումը եվրոպական սոցիալիստական երկրներում ևն: ՍՍՀՄ առևտրատնտեսական կապերի մեջ է աշխարհի 131 երկրի հետ: Նրա արտաքին առևտրի շրջանառության ծավալը 1979-ին կազմել է 80,3 մլրդ ռ., որից սոցիալիստական երկրների հետ՝ 45,1 մլրդ ռ., այդ թվում ՏՓԽ-ի անդամ-երկրների հետ՝ 41,7 մլրդ ռ.: Սոցիալիստական երկրների տնտ. ինտեգրացիայում զգալիորեն աճել է *Տնտեսական համագործակցության միջազգային բանկի* և *Միջազգային ինվեստիցիոն բանկի* դերը:

Մ. տ. հ-յան մեջ իր բաժինն ունի նաև ՀՍՍՀ: Հայ մասնագետները նախագծել և իրականացրել են էլեկտրատեխնիկական գործարանի կառուցումն ու շահագործումը Բաղդադում (Իրաք): Հայաստանը մասնակցել է Ասուանի (Եգիպտոս) հիդրոհամալիրի, Նաղլուի (Աֆղանստան) հիդրոէլեկտրակայանի, Հինդիկուշի (Հնդկաստան) բարձր լեռնային ավտոճանապարհի, ինչպես նաև Աֆրիկայի և Ասիայի այլ երկրներում ՍՍՀՄ-ի օգնությամբ բազմաթիվ օբյեկտների կառուցմանը: ՀՍՍՀ-ում արտադրված տրանսֆորմատորները, մետաղահատ հաստոցները, սինթետիկ կաուչուկը, գորգերը, կոնյակները, աղանդերային գինիները և այլ արտադրատեսակներ լայն ճանաչում ունեն համաշխարհային շուկայում:

*Գրկ.* Մելքումյան Ս. Ա., Սովետական Հայաստանը ՍՍՀՄ արտաքին տնտեսական կապերի ընդհանուր սիստեմում, Ե., 1977: Международные экономические отношения, М., 1969; Максимова М. М., СССР и международное экономическое сотрудничество, М., 1977. *Ս. Մելքումյան*

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ԴԱՏԱՎԱՐՈՒԹՅՈՒՆ**, միջազգային մասնավոր իրավունքի հատուկ բաժին, որը լուծում է քաղաքացիական գործերի միջազգային ընդդատության, արտասահմանյան քաղաքացիների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների դատավարական վիճակի, արտասահմանյան պետությունների ու դրանց դիվանագիտական ներկայացուցչությունների ընդդատության հարցեր, կատարում է արտասահմանյան երկրների դատարանների հանձնարարությունները, ճանաչում և հարկադիր կատարում է այդ դատարանների որոշումները ևն: Մ. ք. դ-յան իշխող սկզբունքը, այսպես կոչված, դատարանի օրենքն է, ըստ որի արտասահմանյան քաղաքացիների հետ առնչվող գործեր քննելիս, եթե նրանց գույքը գտնվում է ուրիշ երկրում, կիրառվում է այն երկրի դատավարական կարգը, որտեղ գտնվում է դատարանը:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕԼԻՄՊԻԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ (ՄՕԿ)**, օլիմպիական շարժման բարձրագույն ղեկավար օրգան: Ստեղծվել է 1894-ի հունիսի 20-ին, ֆրանսիացի հասարակական գործիչ Պիեռ դե Կուբերտենի (1863—1937) նախաձեռնությամբ: ՄՕԿ-ի կազմի մեջ սկզբում մտան 12 երկրների 14 ներկայացուցիչներ (Ռուսաստանից գեներալ Բուտովսկին), որոնք նաև իրենց երկրներում ազգային օլիմպիական կոմիտեների կազմակերպիչներն էին: Առաջին պրեզիդենտ ընտրվեց Հունաստանի ներկայացուցիչ Դ. Վիկելասը: Օլիմպիական խարտիայի (հրովարտակ) բնորոշմամբ ՄՕԿ-ի գլխավոր խնդիրներն են. *օլիմպիական խաղերի* ծրագրերի հաստատումը, նրանց պարբերաբար անցկացումը և կատարելագործումը, սիրողական սպորտի զարգացման կազմակերպումն ու ղեկավարումը, բոլոր երկրների մարզիկների միջև բարեկամության ու համագործակցության ամրապնդումը: ՄՕԿ-ը մշտական գործող կազմակերպություն է, որի անդամներն ընտրվում են ազգային օլիմպիական կոմիտեներ ունեցող երկրներից և համարվում ՄՕԿ-ի ներկայացուցիչ՝ իրենց երկրներում: Յուրաքանչյուր երկրում կարող է լինել ՄՕԿ-ի միայն մեկ անդամ, բացառությամբ խոշոր, օլիմպիական շարժմանը առանձնապես ակտիվ մասնակցություն ունեցող երկրների և այն երկրների, որոնցում տեղի են ունեցել օլիմպիական խաղեր: 1980-ին ՄՕԿ-ը միավորում էր 148 ազգային օլիմպիական կոմիտե և ուներ 89 անդամ (ՍՍՀՄ-ից՝ 2): Մինչև 1966-ը ՄՕԿ-ի անդամներն ընտրվում էին ցմահ, դրանից հետո ընտրվածները պետք է պաշտոնաթող լինեն 72 տարեկան դառնալիս: ՄՕԿ-ի գերագույն

օրգանը սեսիան է (անդամների ընդհանուր ժողովը), որը հրավիրվում է տարեկան մեկ, իսկ օլիմպիական տարում՝ 2 անգամ (ամառային և ձմեռային օլիմպիադաների նախօրյակին)։ Սեսիաների միջև ընկած ժամանակաշրջանում օլիմպիական շարժման ղեկավարումը իրականացնում է գործադիր կոմիտեն, որն ընտրվում է ՄՕԿ-ի անդամների կազմից։ Գործկոմի մեջ մտնում են. պրեզիդենտը (ընտրվում է 8 տարին մեկ), 3 փոխպրեզիդենտ (մեկը՝ Եվրոպայից, ներկայումս՝ ՍՍՀՄ-ից) և 5 անդամ (մեկը՝ ՍՍՀՄ-ից), որոնք ընտրըվում են 4 տարին մեկ։ ՄՕԿ-ի շտաբ-բնակարանը Լոզաննն է (Շվեյցարիա)։ ՄՕԿ-ի 8-րդ պրեզիդենտն է Խուան Անտոնիո Սամարանչը (1980-ից, Իսպանիա)։

**ՄԻՋԱԿԱՅՔ ԵՎ ՀԱՏՎԱԾ** կետերի պարզագույն բազմություններ թվային առանցքի վրա։ Իրական առանցքին պատկանող A և B կետերի միջև ընկած կետերի բազմությունը (առանց A և B կետերի) կոչվում է միջակայք։ A և B կետերի միջև ընկած բազմությունը (A և B կետերը ներառյալ) կոչվում է հատված։ «Մ. և հ.» տերմիններն օգտագործվում են նաև $(a,b)=\{x:a<x<b\}$ և $[a,b]=\{x:a\leqslant x\leqslant b\}$ տեսքի իրական թվերի բազմության համապատասխան ենթաբազմությունները նշանակելու համար։ Լայն առումով միջակայք են անվանում իրական թվերի բազմության բոլոր կապակցված ենթաբազմությունները, այսինքն՝ $(a,b)$-ից և $[a,b]$-ից բացի նաև՝ $(a,b]=\{x;a<x\leqslant b\}$ $[a,b)=\{x;a\leqslant x<b\}$, $(a,\infty)=\{x;x>a\}$, $[a,\infty)=\{x;x\geqslant a\}$ $(-\infty,b)=\{x;x<b\}$, $(-\infty,b]=\{x;x\leqslant b\}$ տեսքի բազմությունները։

**ՄԻՋԱՁԳԻՉ**, բազմաասայր կտրող գործիք դետալների միջանցիկ անցքերն ու արտաքին մակերևույթները *միջաձգիչ հաստոցներով* մշակելու համար։ Մշակվող մակերևույթի ձևից կախված, Մ-ները լինում են՝ գլանական, նիստավոր, շլիցավոր, երիթային, արտաքին հարթ և ձևավոր։ Ներքին միջաձգման (նկ.) Մ-ի ատամները, որոնք դասավորված են կտրող մասի




Միջաձգիչներ. *ա*. ներքին միջաձգման, *բ*. արտաքին միջաձգման, *1*. պոչամաս, *2*. և *5*. առջևի և ետևի ուղղորդիչ մասեր, *3*. կտրող մաս, *4*. կալիբրող ատամներ

վրա, կատարում են թողվածքի կտրման հիմնական աշխատանքը։ Մ-ի կալիբրող մասն ունի 3—8 ատամ։ Բացի կտրող Մ-ներից կան նաև հարթող Մ-ներ, որոնք մետաղը ոչ թե կտրում են, այլ հարթեցնում ու խտացնում։

**ՄԻՋԱՁԳԻՉ ՀԱՍՏՈՑ**, մետաղահատ հաստոց՝ արտաքին և ներքին մակերևույթները *միջաձգիչով* մշակելու համար։ Տարբերում են ընդհանուր և հատուկ նշանակման հորիզոնական (կիրառվում են գլխավորապես ներքին միջաձգման համար), ուղղաձիգ (ցանկացած միջաձիգ աշխատանքների համար) Մ. հ-ներ, պտտվող սկավառակային միջաձգիչով ատամնամիջաձիգ հաստոցներ (գլանական և կոնական ատամնանիվների ատամների պարուրակման համար)։ Մ. հ-ի հիմնական պարամետրերն են. քարշի ուժը (սահնակի զարգացրած), որը որոշ Մ. հ-ների մոտ հասնում է 100 *մն*, և սահնակի ընթացքի երկարությունը՝ մինչև 2 *մ*։ Ընդհանուր նշանակման հաստոցների միջաձգման արագությունը 15—20 *մ/ր* է, հատուկ հաստոցներինը՝ մինչև 90 *մ/ր*, անընդհատ գործողության հաստոցներինը՝ 1,5—5 *մ/ր*։ Հաստոցների հաղորդակը սովորաբար հիդրավլիկական է, բարձրարագային հաստոցներինը՝ էլեկտրամեխանիկական։ Մ. հ-ները կիրառվում են զանգվածային և խոշոր-սերիական արտադրությունում, ապահովում են մեծ ճըշգըրտություն (1—2 դասի), մշակված մակերևույթների փոքր խորդուբորդություն (մինչև 8—10 դասի)։ Մ. հ-ների զարգացումն ընթանում է նախապատրաստուկի տեղադրման և պատրաստի դետալը հաստոցի վրայից վերցնելու գործողությունների, գործիքը նախապատրաստուկին մոտեցնելու շարժումների և կապիչին ամրացնելու ու սկզբնական դիրքին վերադարձնելու ավտոմատացման ուղղությամբ։

**ՄԻՋԱՆԿՅԱԼ ԲԱՌԵՐ, ԲԱՌԱԿԱՊԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ, ՆԱԽԱԴԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, նախադասության կազմի մեջ մտնող, սակայն քերականորեն նրան չկապված և նախադասության անդամ չհանդիսացող բառեր, բառակապակցություններ ու նախադասություններ։ Արտահայտում են՝ 1. խոսողի վերաբերմունքը հաղորդածի և իրականության հարաբերության նկատմամբ [(հաստատում, կասկած, ենթադրություն ևն). Նա, **ըստ երևույթին** (ամենայն հավանականությամբ, ինչպես երևում է), չի գալու], 2. տարբեր մտքերի դատողությունների միջև եղած տրամաբանական կապը (Այդ բանը, **սակայն**, ինձ զարմացրեց), 3. վկայակոչում (Գոյականը, **ինչպես հայտնի է**, նյութական խոսքի մաս է։ Այսօր, **ըստ նրա**, ներկայացում չի լինելու), 4. լրացուցիչ տեղեկություն, մեկնաբանություն, բացատրություն, ճշտում [(ներդրյալ բառեր, բառակապակցություններ, նախադասություններ) Աշոտը (իմ ընկերը) լավ անձնավորություն է, կամ Աշոտը (այսպես է ընկերոջս անունը) լավ անձնավորություն է]։

Մ. բ., բ., ն. բուն նախադասության անդամներից առանձնանում են հատուկ հնչերանգով, որը գրավոր խոսքում արտահայտվում է ստորակետով ու փակագծով (փակագծով անջատվում են ներդըրյալ բառերն ու նախադասությունները)։

*Ն. Պառնասայան*

**ՄԻՋԱՆԿՅԱԼ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐ**, նույն հողամասում վեգետացիայի շրջանում բերքահավաքից հետո մինչև հաջորդ կուլտուրայի ցանքն աճեցվող բույսեր։ Մ. կ-ի ցանքով մեկ վեգետացիայի ընթացքում կարելի է ստանալ երկու բերք։ Պայմանականորեն բաժանվում են ենթացանքային, հետհնձյա, խոզանացան և ձմեռող խմբերի։ Ենթացանքային բույսերից աշնանացան ցորենի հետ մշակվում են սերադելան, լուպինը, աշնանացան վիկը, ոլոռ-արևածաղկի խառնուրդը, աշնանացան հլածուկը, գազարը, սոդանի խոտը։ Հետհնձյա և խոզանացան բույսերից Արարատյան դաշտում աշնանացան ցորենի ու գարու, վաղահաս կարտոֆիլի և կաղամբի բերքահավաքից հետո մշակվում են եգիպտացորեն (կանաչ զանգվածի համար), կերի ու շաքարի ճակնդեղ, լոբի, վարունգ։ Ձմեռող Մ. կ-ից են ոլոռը, ձմեռող թավոտ վիկը և աշնանացան աշորան (խառը ցանք)։ Ձմեռող Մ. կ. ցանում են սեպտեմբերի առաջին կեսերին, գարնան սկզբին՝ կանաչ կեր ստանալու համար։

*Ա. Մաթևոսյան*

**ՄԻՋԱՍՏՂԱՅԻՆ ԿԼԱՆՈՒՄ**, երկնային մարմինների ճառագայթման թուլացում միջաստղային տարածության մեջ։ Պայմանավորված է, հիմնականում, կլանման, դիֆրակցիայի և ցրման երևույթներով։ Հայտնագործել է ամերիկացի աստղագետ Տրյումպլերը (1930)։ Մ. կ-ման մեծությունը տարբեր ուղղություններով խիստ տարբեր է (տիեզերական փոշու անհավասարաչափ բաշխման հետևանքով). աճում է դեպի *Գալակտիկայի* հարթությունը և հասնում մի քանի *աստղային մեծության*՝ 1 *կպս* հեռավորության վրա։ Մ. կ-ման հետևանքով հեռավոր աստղերի լույսն այնքան է թուլանում, որ դրանք հաճախ, հատկապես Գալակտիկայի կենտրոնի ուղղությամբ, նույնիսկ խոշորագույն աստղադիտակներով չեն դիտվում։ Մ. կ-ման չափը կախված է ալիքի երկարությունից և աճում է դեպի սպեկտրի կարճալիքային մասը (այդ պատճառով հեռավոր աստղերի լույսը դիտվում է բնականից ավելի կարմիր)։ Այդ կախումը որոշվում է կլանման օրենքով, որը ցույց է տալիս, որ Մ. կ-ման ազդեցությունը զգալի է նաև սպեկտրի օպտիկական տիրույթից դուրս։

Մ. կ-ման ուսումնասիրությունը կարևոր է երկնային մարմինների ճշգրիտ հեռավորությունների որոշման, կլանումն առաջ բերող միջաստղային նյութի հատկությունների հետազոտման համար։ Մ. կ-ման պատճառը միջաստղային փոշենյութն է, որը կազմված է շուրջ $10^{-5}$ *սմ* տրամագծով հատիկներից։ Այն գալակտիկայում բաշխված է առանձին կլանող ամպերի ձևով, որոնք կենտրոնանում են գալակտիկայի սիմետրիայի հարթության շուրջը (տես *Միջաստղային միջավայր*)։ Մ. կ. առաջացնող ամպաձև կառուցվածքի վերաբերյալ պատկերացումը մշակել են Վ. Հ. *Համբարձումյանը* և Շ. Գ. Գորդելաձեն (1937)։ Լույսի կլանման փոքր ունակություն ունենալու հետևանքով կլանող ամպերը, մեծ մասամբ, անմիջականորեն չեն դիտվում։ Դրանց վիճակագրական ուսումնասիրության նպատակով Վ. Հ. Համբարձումյանը մշակել է երկնակամարի տարբեր տիրույթներում աստղերի ու գալակտիկաների խտության, ինչպես նաև *Ծիր կաթնի* պայծառության բաշխման Մ. կ-մամբ պայմանավորված *ֆլուկտուացիաների տեսությունը*։ Այն հնարավորություն տվեց ֆլուկտուացիաների միջոցով որոշել Մ. կ-ման միջավայրը կազմող մութ միգամածությունների միջին հատկությունները (չափեր, կլանման ունակություն, տարածական խտություն և այլն)։

*Գրկ.* Աղեկյան Թ. Ա., Աստղեր, գալակտիկաներ, մետագալակտիկա, Ե., 1971: Թումանյան Բ. Ե., Միրզոյան Լ. Վ., Աստղագիտություն, Ե., 1978: *Լ. Միրզոյան*

**ՄԻՋԱՍՏՂԱՅԻՆ ՄԻՋԱՎԱՅՐ**, *գալակտիկաներում* աստղերի միջև գտնվող, նոսր գազով, փոշիով, ինչպես նաև մագնիսական դաշտերով, ճառագայթման քվանտներով ու տիեզերական ճառագայթներով լցված միջավայր, որն աստղերի մերձակայքում փոխարկվում է միջմոլորակային միջավայրի: Միջաստղային գազը կազմված է առանձին ատոմներից ու մոլեկուլներից, որոնցից գերակշռում են ջրածնի ու հելիումի ատոմները (ըստ ատոմների թվի, համապատասխանաբար՝ 90% և 10%): Շատ փոքր քանակով հանդիպում են թթվածնի, ածխածնի, նեոնի, ազոտի և այլ տարրերի ատոմներ, մոլեկուլներից $H_2$-ը ամենատարածվածն է, կան նաև CH, OH, $H_2O$, $NH_3$, $CH_2O$ և այլ (թվով շուրջ 40) մոլեկուլներ: Չնայած խիստ փոքր քանակին, առաջինը հայտնաբերվել են միջաստղային կալցիումը և նատրիումը, որոնց ամենաուժեղ սպեկտրային գծերը գտնվում են սպեկտրի տեսանելի մասում: Միջաստղային փոշին, որը *միջաստղային կլանում* է առաջացնում, կազմված է շուրջ $10^{-5}$ *սմ* տրամագծով փոշեհատիկներից: Միջաստղային գազի և փոշու քանակը տարբեր է ձևաբանական տարբեր դասերին պատկանող գալակտիկաներում: Օրինակ, էլիպսաձև գալակտիկաներում գազ գրեթե չկա, մինչդեռ անկանոն գալակտիկաներում այն կազմում է ընդհանուր զանգվածի մինչև 15%-ը: Միջաստղային նյութը կենտրոնացած է գալակտիկաների սիմետրիայի հարթության շուրջը (սկավառակաձև) առանձին խտացումներով՝ ամպերով, որոնց տրամագիծը հասնում է 50 *պս*-ի: Պարուրաձև գալակտիկաներում միջաստղային գազը և փոշին խտանում են թևերում: Գազի միջին խտությունն ամպերում շուրջ մեկ ատոմ է 1 *սմ*³-ում ($10^{-24}$ *գ/սմ*³), իսկ ամպերի միջև մոտ 10 անգամ փոքր է: Շուրջ 100 անգամ ավելի փոքր է փոշու խտությունը: Տարբեր են նաև դրանց ջերմաստիճանները. 10—100K ամպերում և մինչև 10K ամպերի միջև:

*Զերմ աստղերի* շուրջը միջաստղային ջրածինը իոնացած է և դիտվում է HII տիրույթների տեսքով, որոնց տրամագիծը աճում է աստղի լուսատվության հետ: Այդ տիրույթներից դուրս ջրածինը գտնվում է չեզոք վիճակում (HI տիրույթներ): Ջերմ աստղերի շուրջը գտնվող փոշին դիտվում է անդրադարձնող միգամածությունների տեսքով, իսկ դրանցից մեծ հեռավորությունների վրա փոշին անմիջականորեն չի դիտվում և կարող է ուսումնասիրվել միայն իր առաջ բերած լույսի կլանման շնորհիվ:

Միջաստղային գազի շարժման արագությունը, հիմնականում, պայմանավորված է պտույտով՝ Գալակտիկայի կենտրոնի շուրջը: Օպտիկական ալիքներում անտեսանելի չեզոք ջրածնի ուսումնասիրության գործում հսկայական դեր խաղաց 21 *սմ* երկարությամբ ռադիոգծի հայտնաբերումը, որի դիտումները բացահայտեցին Գալակտիկայում (և այլ գալակտիկաներում) չեզոք ջրածնի բաշխման առանձնահատկությունները: Մ. մ-ի վերաբերյալ հարուստ ինֆորմացիա են տալիս նաև արտամթնոլորտային դիտումները՝ սպեկտրի հեռավոր ուլտրամանուշակագույն մասում:

Միջաստղային փոշեհատիկներն ունեն ձգված ձև և որոշակի դասավորություն՝ պայմանավորված միջաստղային մագնիսական դաշտերի ազդեցությամբ: Այդ պատճառով լույսը դրանց միջով անցնելիս բևեռանում է (տես *Բևեռացում լույսի*): Մ. մ-ի առաջացման համար վճռական դեր են խաղում շատ աստղերից (*նոր աստղեր*, *գերնոր աստղեր*, Վոլֆ—Ռայե տիպի աստղեր, սպեկտրներում պայծառ գծեր ունեցող աստղեր) գազանյութի արտավիժման կամ հանգիստ արտահոսքի երևույթները, որոնց հետևանքով գազանյութի քանակը Մ. մ-ում անընդհատ աճում է: Դիտումները վկայում են նաև, որ աստղերի էվոլյուցիայի վաղ փուլերը սերտորեն կապված են գազանյութի ճառագայթման հետ՝ մասնավորապես OH, $H_2O$ և այլ մոլեկուլների ռադիոգծերում: Պայմանավորվա՞ծ է արդյոք այդ փաստը գազի խտացման հետևանքով աստղերի առաջացմամբ, թե գերխիտ նախաստղերի տրոհման հետևանքով աստղերի ու գազանյութի առաջացմամբ (տես *Կոսմոգոնիա*)՝ առայժմ որոշակիորեն պարզ չէ:

*Գրկ.* տես *Միջաստղային կլանում* հոդվածի գրականությունը:

*Լ. Միրզոյան*

**ՄԻՋԱՏԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, էնտոմոլոգիա (<հուն. ἔντομον — միջատ և ...*լոգիա*), գիտություն *միջատների* մասին, կենդանաբանության բաժին: Սկզբնական շրջանում Մ. ուսումնասիրել է բոլոր *հոդվածոտանիներին*, սակայն հետագայում սահմանափակվել է միջատների դասով: Ժամանակակից Մ. կոմպլեքս գիտություն է, որն ուսումնասիրում է միջատների կառուցվածքը և կենսագործունեությունը, անհատական և պատմական զարգացումը, ձևերի բազմազանությունը, աշխարհագրական տարածվածությունը, կապը միջավայրի հետ ևն: Բաժանվում է ընդհանուր կամ տեսական և կիրառական կամ գործնական Մ-յան: Ընդհանուր Մ. ընդգրկում է միջատների մորֆոլոգիան, անատոմիան, բջջաբանությունը, սաղմնաբանությունը, ֆիզիոլոգիան, էկոլոգիան, հնէաբանությունը, կարգաբանությունը ևն: Կիրառական Մ. ուսումնասիրում է գյուղատնտ. բույսերի և մթերքների վնասատուներին, մարդու, կենդանիների և բույսերի հիվանդություններ փոխանցողներին, մակաբույծներին, ինչպես նաև օգտակար (մեղու, շերամ, բույսերը փոշոտողներ, հող առաջացնողներ ևն) միջատներին:

Միջատները մարդուն հետաքրքրել են ամենահին ժամանակներից, երբ նկատվել է առանձին տեսակների հասցրած վնասը և մյուսների օգտավետությունը: Դեռևս մ. թ. ա. 3-րդ հազարամյակում ասորական սեպագիր արձանագրություններում և եգիպտական պապիրուսներում հիշատակված են մորեխների հասցրած վնասի մասին, իսկ հին չինական ձեռագրերում ցուցումներ կան շերամապահության և բանջարանոցային վնասատու միջատների դեմ պայքարի վերաբերյալ:

Սակայն Մ., որպես գիտություն, առաջացել է XVII դ.: Գիտության հիմքը կազմել են Յա. Սվամերդամի (Հոլանդիա, 1669), Մ. Մալպիգիի (1686), Ֆ. Բուոնաննիի (Իտալիա), Ի. Գեդարտի (Գերմանիա) աշխատությունները: Կենդանիների, այդ թվում և միջատների, ժամանակակից կարգաբանության հիմնադիրը Կ. *Լիննեյն* է, որն իր «Բնության համակարգ» հայտնի աշխատությունում (10-րդ հրտ., հ. 1—2, 1758—59) նկարագրել է միջատների 1936 տեսակ, դրանց բաժանել կարգերի, սեռերի, տվել գիտական անվանումները: Չ. Դարվինի «Տեսակների ծագումը» (1859) աշխատության երևան գալուց հետո միջատների համակարգերը սկսեցին կազմվել ֆիլոգենետիկ սկզբունքով (ավստրիացի Ֆ. Բրաուեր, ամերիկացի Ա. Պակարդ և ուրիշներ): XIX դ. միջատաբանական կարևոր աշխատանքներ են կատարվել Ֆրանսիայում (Լ. Դյուֆուր, Ժ. Ֆաբր), Ռուսաստանում (Ի. Պորչինսկի, Ա. Կովալևսկի, Ա. Տիխոմիրով), Գերմանիայում (Ա. Վայսման) և այլուր: XIX դ. վերջերին և XX դ. լույս են տեսնում միջատներին նվիրված մեծ թվով աշխատություններ, փաստական հարուստ նյութ է կուտակվում դրանց ֆաունայի վերաբերյալ: Առանձնապես զարգանում է միջատների կարգաբանությունը: Գիտությանը հայտնի միջատների տեսակների թիվը հասնում է 1 մլն (ենթադրվում է, որ գոյություն ունի 2—3 մլն տեսակ), ամեն տարի նկարագրըվում են հարյուրավոր նոր տեսակներ: Կատարելագործվում և վերակազմվում են միջատների համակարգերը, օգտագործվում հետազոտությունների նորագույն մեթոդներ (էլեկտրոնային մանրադիտակ, էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, տաքսոնոմիական վերլուծություն ևն): Ակտիվորեն զարգանում են միջատների ֆիզիոլոգիան, հատկապես զգայարանների ուսումնասիրությունը, մորֆոլոգիան, որտեղ օրգաններն ուսումնասիրվում են ֆունկցիայի հետ միասնության մեջ: Մեծ նշանակություն ունեցավ ֆոտոպերիոդիզմի ուսումնասիրությունը (Ա. Դանիլևսկի և ուրիշներ): Հայտնաբերվեցին միջատների զարգացումը կարգավորող հորմոններ և հակահորմոններ, որոնք նախատեսվում են օգտագործել վնասատուների դեմ կազմակերպվող պայքարում: Մ-յան ինքնուրույն բաժին է դարձել միջատների կենսաքիմիան, հայտնաբերվել են դրանց կողմից արտաքին միջավայր արտազատվող նյութերը, հատկապես ֆերոմոնները, որոնք կարգավորում են միջատների վարքը: XX դ. գիտական բարձր հիմքերի վրա են դրվել միջատների էթոլոգիական ուսումնասիրությունները, որոնց շնորհիվ բացահայտվել է «մեղուների լեզուն» (Կ. Ֆրիշ, Գերմանիա): Լայն զարգացում են ստացել միջատների էկոլոգիան, աշխարհագրությունը, հնէաբանությունը: XIX դ. սկզբում հայտնի է եղել ընդամենը 219 բրածո միջատ, 1978-ին՝ ավելի քան 12 հզ. տեսակ: Վերջին տարիներին որոշ միջատներ (օրինակ՝ դրոզոֆիլ պտղաճանճերը) գենետիկայում դարձել են գիտական փորձերի կարևոր օբյեկտ: XIX դ. վերջում և հատկապես XX դ. արագ թափ է ստանում կիրառական Մ., որը բաժանվում

է գյուղատնտ. (դաշտային պտղատու և բանջարանոցային կուլտուրաների վնասատուներ), անտառային (անտառի վնասատուներ), բժշկ. և անասնաբուժական (արյունածուծ միջատներ, մարդու և ընտանի կենդանիների մակաբույծներ, վարակիչ հիվանդությունների փոխանցողներ) Մ-յան: Մեծ թվով վնասակար միջատների առկայությունը և դրանց հասցրած վնասի չափերն ստիպեցին տարբեր երկրներում կենտրոնացնել դրանց դեմ մղվող պայքարը: Բույսերին վնասատուներից պաշտպանելու համար շատ երկրներում կազմակերպվեցին պետ. միջատաբանական ծառայություններ: 1929-ին ՍՍՀՄ-ում հիմնադրվեց բույսերի պաշտպանության համամիութենական ԳՀԻ: Գյուղատնտ. Մ-յան աշխատանքները կոորդինացվում են ՍՍՀՄ ԳԱ և ՀԱՄԳԳԱ գիտական խորհուրդների կողմից: Վնասատու միջատների դեմ պայքարի մեխանիկական միջոցներին փոխարինել են քիմ., կենսբ. և ագրոտեխնիկական ժամանակակից մեթոդները, որոնք մեծապես նպաստում են անտառատնտեսության և գյուղատնտ. արդյունավետության բարձրացմանը: Ուրվագծվում են վնասատուների դեմ գենետիկական պայքարի սկզբունքները (Ա. Սերեբրովսկի, ՍՍՀՄ, Դ. Նորթ, ԱՄՆ): Բժշկ. Մ-յան զարգացումն սկսվել է մալարիայի փոխանցող մոծակների ուսումնասիրությամբ: Մշակված են մարդկանց և գյուղատնտ. կենդանիներին ու բույսերին միջատների միջոցով փոխանցվող վտանգավոր հիվանդություններից պաշտպանելու գործնական միջոցներ (տես *Բույսերի հիվանդություններ*, *Բույսերի պաշտպանություն*):

ՀՍՍՀ-ում միջատաբանական ուսումնասիրություններ են կատարվում Երևանի համալսարանի կենդանաբանության ամբիոնում, ՀՍՍՀ ԳԱ կենդանաբանության, ՀՍՍՀ գյուղատնտ. մինիստրության բույսերի պաշտպանության ԳՀԻ-ներում և այլուր: Մեծ վաստակ ունեն հայ միջատաբաններ Մ. Մանուկյանը, Հ. Ավետյանը, Գ. Մարջանյանը, Գ. Ազարյանը, Հ. Տերտերյանը, Վ. Վասիլյանը, Մ. Տեր-Մինասյանը, Բ. Բաղդասարյանը, Ս. Խնձորյանը և ուրիշներ: Սովետական միջատաբանները միավորված են Համամիութենական միջատաբանական ընկերությունում: Միջատաբանական կարևորագույն պարբերական հանդեսներից են «Էնտոմոլոգիչեսկոյե օբոզրենիե» («Энтомологическое обозрение»), «Էնթոմոլոջի աբսթրաքթս» («Entomology Abstracts»), «Ռեվյու ըվ ըփլայդ էնթոմոլոջի» («Review of Applied Entomology») ևն:

*Գրկ.* Հայաստանի գյուղատնտեսական կուլտուրաների, անտառների ու պահեստների վնասատուները, Ե., 1976: Щеголев В. Н., Общая энтомология, 2 изд., М., 1971; Тыщенко В. П., Основы физиологии насекомых, ч. 1, Л., 1976.

*Մ. Տեր-Մինասյան*

**ՄԻՋԱՏԱՋԵՐԾՈՒՄ**, դեզինսեկցիա (*դեզ*... և լատ. insectum — միջատ), վարակիչ հիվանդություններ փոխանցող, սննդամթերքներին, գյուղատնտեսական մթերքներին ու մարդկանց վնաս պատճառող *հոդվածոտանիների* դեմ պայքարի մեթոդներ ու միջոցներ: Տարբերում են բժշկ., անասնաբուժական և գյուղատնտ. Մ.: Մ-ման մեթոդների նպատակը հոդվածոտանիների աճման ու բազմացման համար անբարենպաստ պայմանների ստեղծումն է (կանխարգելիչ Մ.) և լրիվ ոչնչացումը (ոչնչացնող Մ.):

Բժշկական կանխարգելիչ Մ. ընդգրկում է հագուստի ոջիլների, փայտոջիլների, լվերի, խավարասերների, ցեցերի բազմացումը կանխող սիստեմատիկ միջոցառումներ: Բնակավայրերի պլանային մաքրումը, կոյուղու համակարգի կարգավորումը կանխում են տնային ևն ճանճերի բազմացումը: Ճահիճների չորացումը, գետերի մաքրումն ու հունի խորացումը պակասեցնում են մոծակների, մլակների ևն բազմացումը: Ոչնչացնող Մ. ընդգրկում է քիմ., ֆիզիկական և կենսբ. միջոցների կիրառումը, որոնք ազդում են հոդվածոտանիների զարգացման բոլոր փուլերի վրա: Քիմ. միջոցները (տես *Միջատասպաններ*) հոդվածոտանու օրգանիզմ են թափանցում կուտիկուլայով (կոնտակտային միջատասպաններ), շնչառական ուղիներով (ֆումիգանտներ) կամ աղիքային համակարգով (աղիքային թույներ): Որոշ պատրաստուկներ օժտված են վերոհիշյալ բոլոր հատկություններով: Միջատասպան միջոցներն օգտագործվում են լուծույթների, փոշիների և աերոզոլների ձևով: Մ-ման ֆիզիկական մեթոդը հիմնված է հիմնականում բարձր (50°C), հազվադեպ նաև ցածր ջերմաստիճանի (տաք ջուր, օդ, գոլորշի) օգտագործման վրա: Կիրառում են նաև մեխանիկական միջոցներ՝ միջատներ որսող թակարդներ, կպչուն թղթեր, պատուհանների և դռների ցանցապատում ևն: Կենսբ. մեթոդի դեպքում օգտագործում են հոդվածոտանիների բնական թշնամիներին (ախտածին մանրէներ, վիրուսներ, մակաբույծ և գիշատիչ միջատներ ևն): Կիրառում են նաև իոնացնող ճառագայթման մեթոդը և քիմ. մի շարք նյութեր, որոնք հոդվածոտանիներին զրկում են սերունդ տալու հատկությունից:

Մ. անասնաբուժական. միջատների և տզերի ոչնչացումը կենդանիների վրա, անասնապահական, թռչնաբուծական շենքերում, ֆերմաների տարածքում, պահեստներում, կենդանական ծագման հումքի վերամշակման ձեռնարկություններում, սպանդային կետերում, մսի կոմբինատներում ևն: Լինում է կանխարգելիչ (կատարվում է պարբերաբար՝ միջատների և տզերի զանգվածային բազմացումը և տարաբնակեցումը կանխելու նըպատակով) և ոչնչացնող (միջատներին և տզերին զարգացման բոլոր փուլերում վնասազերծելու նպատակով): Մ. կատարվում է քիմ., ֆիզիկական, մեխանիկական, կենսբ. մեթոդներով: Լայնորեն կիրառվում է քիմ. մեթոդը (օգտագործվում են քլորօրգանական, ֆոսֆորօրգանական, անօրգանական միացություններ, ինչպես նաև բուսական միջատասպաններ): Մշակումը կատարվում է հականեխիչ մեքենաներով:

Մ. գյուղատնտեսական. պահեստներում, ալրաղաց և այլ ձեռնարկություններում սերմնանյութի, տնկանյութի, սննդի, կերի պաշարների, տեխ. հումքի մեջ եղած վնասակար միջատների ոչնչացումը: Սովորաբար կատարվում է քիմ. Մ.՝ ֆումիգացում, շենքերի մշակում աերոզոլերով և սրսկում միջատասպան հեղուկներով, սերմերի փոշոտում դուստերով ևն: Հատիկի և հատիկային մթերքների վնասատուների դեմ արդյունավետ է նաև մեխանիկական Մ.՝ շենքերի մաքրումը թափված մթերքներից, հատիկների մաքրումը հատիկազտիչ մեքենաներով ևն (տես նաև *Ախտահանում սերմերի*, *Վարակայերծում*):

**ՄԻՋԱՏԱԿԵՐ ԲՈՒՅՍԵՐ**, բազմամյա խոտաբույսեր, թփեր, թփիկներ, որոնք որսում են միջատներ (հազվադեպ այլ մանր կենդանիներ) և օգտագործում որպես լրացուցիչ (գլխավորապես ազոտային) սնունդ: Հանդիպում են ամենուրեք (առավելապես արևադարձային և մերձարևադարձային երկրներում): Հայտնի է Մ. բ-ի մոտ 500, ՍՍՀՄ-ում՝ մոտ 18, ՀՍՍՀ-ում՝ 3 տեսակ: Աճում են ազոտական միացություններով աղքատ միջավայրում՝ լճերի ու գետերի ափերին, տորֆային ճահիճներում, գերխոնավ մարգագետիններում: Ազոտային քաղցը, ինչպես նաև ֆոսֆորի, կալիումի ևնի անբավարարությունը Մ. բ. լրացնում են որսած միջատների հաշվին: Ունեն միջատորս հարմարանքներ՝ սափորներ, պարկեր, թարթիչավոր, ատամնաձև ելուստներ ու խոռոչներ, յուրահատուկ գունավորում, արտազատում են միջատներին հրապուրող քաղցրավուն, կպչուն և հոտավետ նյութեր: Պեպսինի տիպի հատուկ ֆերմենտների և օրգ. թթուների (մրջնաթթու, բենզոյական թթու ևն) միջոցով Մ. բ. որսած միջատների սպիտակուցները քայքայում են առավել պարզ, հեշտ յուրացվող միացությունների: Վերերկրյա Մ. բ-ի արմատային համակարգը թույլ է զարգացած, ջրայինների մոտ այն բացակայում է, բայց Մ. բ. կարող են իրենց գոյությունը պահպանել հողից և ջրից ստացվող նյութերի հաշվին: Կենդանական սնունդը արագացնում է Մ. բ-ի զարգացումը, անցումը ծաղկման և պտղատվության: Մ. բ. շատ զգայուն են, արտաքին գրգիռներին անմիջական և կտրուկ ռեակցիա տալու ունակությունը հասել է կատարելության: Մ. բ-ից են՝ *խորշաբույսը*. ազատ լողացող ջրային բույս, տերևների մի մասը ձևափոխվել են մանր փամփշտիկների, որոնցով որսում է ջրային մանր կենդանիներ, որդեր, թրթուրներ: Պինգուիկուլան. տերևները ծածկված են գեղձային կարճ և երկար մազիկներով, որոնք արտադրում են միջատորս կպչուն, լորձանման նյութ և ֆերմենտներ: Ցողաբույսը. միջատներին գրավում է գինեկարմիր գեղձակիր թարթիչների արտադրած կպչուն, ցողի կաթիլներ հիշեցնող հեղուկով, ցողատերևը, նույնպես ալդրովանդան միջատներ է որսում տերևակոթունների վրա եղած խոզանավոր, ծալվող թիթեղիկներով: Ճանճորսի որսացող ապարատները՝ տերևաթիթեղիկների փշիկները կամ խոզաններն են, սափորիկինը (նեպենտես)՝ տերևակոթունի սափորանման ձևափոխումները:

*Ա. Բարսեղյան*

Պատկերազարդումը տես 593-րդ էջից առաջ՝ ներդիրում:

**ՄԻՋԱՏԱԿԵՐՆԵՐ** (Insectivora), կաթնասուն կենդանիների կարգ: Մարմնի երկարությունը 3 *սմ*-ից (գաճաճ սրնչակ) 39 *սմ* է (տենրեկ): Դունչը սուր է, վերջանում է շարժուն կնճիթով: Աչքերը փոքր են, որոշ տեսակների մոտ՝ մաշկի տակ ծածկված: Մ-ի մեծամասնության մարմինը պատված է խիտ, կարճ մազերով (խլուրդներ, սրնչակներ, մշկամկներ), հազվադեպ՝ ցցամազերով (տենրեկներ) կամ ասեղներով (ոզնիներ): Գունավորումը միատոն է, գորշ, թուխ կամ սև, երբեմն՝ բծավոր: Որոշ տեսակների պոչը կարճ է (ոզնիներ), մյուսներինը՝ երկար, համարյա մարմնի չափ (մշկամկներ): Մաշկային գեղձերը լավ են արտահայտված և առանձին Մ-ի մոտ արտադրում են սուր հոտով



Մ ի ջ ա տ ա կ ե ր ն ե ր. *1*. սովորական գոյշատամ սրնչակ, 2. տենրեկ, *3*. մշկամուկ, *4*. եվրոպական խլուրդ, *5*. սովորական ոզնի

արտազատուկ: Լավ զարգացած է գլխուղեղի փոքր հոտառության բաժինը, կիսագնդերը փոքր են և հաճախ չեն ծածկում ուղեղիկը, տեսողությունը թույլ է: Մ-ի կարգը ընդգրկում է 9 ընտանիք (շուրջ 300 տեսակ, որից 38-ը՝ ՍՍՀՄ-ում): ՀՍՍՀ-ում հանդիպում է 3 ընտանիք (ոզնիներ, սրընչակներ, խլուրդներ), 12 տեսակ: Մ. տարածված են ամբողջ աշխարհում (բացի Ավստրալիայից, Անտարկտիդայից և Հարավային Ամերիկայի մեծ մասից): Հանդիպում են ամենուրեք. հս-ում՝ մինչև Սառուցյալ օվկիանոսի ափերն ու մերձափնյա կղզիները, լեռներում՝ մինչև ձյուներն ու սառցադաշտերը: Մ. վարում են վերգետնյա (ոզնիներ), ստորգետնյա (խլուրդներ) կամ կիսաջրային, ջրային (մշկամըկներ) կենսակերպ: Գերազանցապես գիշերային կենդանիներ են, ամենակեր, սակայն գերադասում են կենդանական կերը (անողնաշարավոր և մանր ողնաշարավոր կենդանիներ): Մեծ մասն ապրում է գետնափոր, երբեմն բարդ բներում: Ակտիվ են ամբողջ տարին, ոզնիների որոշ տեսակներ ձմռանը քուն են մտնում: Մ. բազմանում են տարին մինչև 3 անգամ, ծնում 1—25 ձագ: Օգտակար կենդանիներ են, ոչնչացնում են վնասակար միջատներին, մշկամկները, խլուրդներն ունեն արժեքավոր մորթի: Մ. կարող են վտանգավոր հիվանդությունների տարածող տզերի միջանկյալ տեր լինել:

Մ. ընկերքավոր կաթնասունների ամենահին և պարզունակ խումբն է, որից սկիզբ են առել կաթնասունների բազմաթիվ կարգեր (կրծողներ, գիշատիչներ, պրիմատներ ևն):

*Բ. Մարտիրոսյան*

**ՄԻՋԱՏԱՍՊԱՆՆԵՐ**, ի ն ս ե կ տ ի ց ի դ ն ե ր, վնասատու միջատների դեմ պայքարի քիմիական միջոցներ: Ըստ միջատի օրգանիզմ թափանցելու ուղիների ստորաբաժանվում են 4 խմբի. ա. ա ղ ի ք ա յ ի ն Մ. օրգանիզմ են թափանցում բերանի խոռոչով: Մեծ մասամբ մկնդեղի անօրգանական միացություններն են (կալցիումի, բարիումի, մագնեզիումի, կապարի արսենատներ), մետաղների ֆտորիդները, սիլիցիումի ֆտորիդը ևն: Օգտագործումը սահմանափակ է. բ. կ ո ն տ ա կ տ ա յ ի ն Մ. օրգանիզմ են թափանցում մաշկի միջոցով՝ ֆոսֆորի, քլորի, ազոտի և ծծմբի օրգ. միացությունները, պիրեթրումը ևն, գ. ն ե ր ք ո ւ ս ա յ ի ն կամ հ ա մ ա կ ա ր գ ա յ ի ն Մ. ներծծվում են բույսերի արմատների, տերևների միջոցով, սննդանյութերի հետ դրանք տեղափոխվում են անոթային համակարգով, և մակաբույծ միջատների համար բույսերը դառնում են թունավոր: Դրանցից են՝ մեթիլմերկապտաֆոսը, ֆոսֆամիդը ևն: Ներքուսային Մ. կիրառվում են նաև կենդանիների էկտոմակաբույծների, վարակիչ հիվանդություններ տարածողների դեմ պայքարելու համար: Դ. ֆ ու մ ի գ ա ն տ ն ե ր կամ շ ն չ ա ռ ա կ ա ն Մ. շնչառության պրոցեսում միջատների օրգանիզմ են թափանցում գոլորշի կամ գազային վիճակում: Դրանցից են՝ քլորպիկրինը, դիքլորէթանը, մեթիլբրոմիդը, ծծմբածխածինը ևն: Մ-ի ընդունված դասակարգումը պայմանական է, քանի որ դրանց մեծ մասը կարող է օրգանիզմ թափանցել միաժամանակ մի քանի ուղիներով: Մ. օգտագործվում են սրսկման, փոշոտման, ֆումիգացման, ախտահանման ևն եղանակներով: Մ-ի ազդեցության տևողությունը մեկ օրից մինչև մի քանի տարի է: Մ-ի (հիմնականում օրգ.) արտադրությունն անընդհատ աճում է:

Ստեղծվում են պայքարի կենսաբանական, կենսաֆիզիկական, մեխանիկական, կենսաքիմիական, ագրոտեխնիկական այնպիսի եղանակներ, որոնք անվնաս են շրջապատի, մարդու ինչպես նաև օգտակար՝ կենդանիների համար: Տես նաև *Թունաքիմիկատներ*:

*Հ. Թումանյան*

**ՄԻՋԱՏՆԵՐ** (Insecta կամ Hexapoda), *հոդվածոտանիների* տիպի անողնաշարավոր կենդանիների դաս: Բնորոշ է թռչելու հատկությունը: Մարմինը (երկարությունը՝ 0,2—300 *մմ*), հատվածավոր է, հաստ կուտիկուլայով պատված և կազմված է 3 բաժնից՝ գլուխ, կուրծք և փորիկ: Կմախքն արտաքին է, հիմնականում խիտինային: Գլխի վրա գտնվում են մեկ զույգ բեղիկները, զույգ բարդ (ֆասետային) և պարզ աչքերը, բերանային օրգանները: Բեղիկները (անտենաները) լինում են թելաձև, թիթեղաձև, փետրաձև, ծնկաձև ևն և ծառայում են որպես հոտառության, շոշափելիքի օրգան: Բերանային ապարատը կրծող, լիզող, ծծող և ծակող տիպի է: Կուրծքը կազմված է առաջնակրծքից, միջնակրծքից և ետնակրծքից, որոնցից յուրաքանչյուրին միացած են մեկ զույգ ոտքեր: Վերջիններս լինում են վազող, ցատկող, քայլող, բռնող, փորող ևն և կազմված են հետևյալ մասերից՝ կոնք, զիստ, ազդր, սրունք և թաթ: Մեծ մասին բնորոշ են միջնակրծքին և ետնակրծքին միացած 2 զույգ ջղավոր թաղանթաթևերը: Փորիկը բաղկացած է մինչև 11 հատվածից և հասուն անհատների մոտ զուրկ է ոտքերից: Շատ Մ-ի փորիկներն ունեն հավելվածներ՝ արուների զուգավորման օրգանը, էգերի ձվադիրը կամ խայթը ևն: Մ-ի նյարդային համակարգը լարասանդղաձև է, գլխի առջևի, միջին և ետին հանգույցները միաձուլվելով կազմել են գլխուղեղը: Նյարդային գործունեությունն արտահայտվում է տարբեր բնազդներում՝ սննդառության, արուների և էգերի փոխհարաբերության, բնի կառուցման, սերնդի պահպանման ևն: Առանձին տեսակների մոտ հնարավոր է պայմանական ռեֆլեքսների մշակումը: Լավ զարգացած են զգացողության, տեսողության, լսողության, շոշափելիքի ևն օրգանները: Հոտառության օրգանները կենտրոնացած են հիմնականում բեղիկների, համինը՝ բերանը շրջապատող հավելումների վրա: Որոշ տեսակների արուները հոտառությամբ գտնում են մի քանի կիլոմետր հեռու գտնվող էգերին: Մ-ի մի մասը լավ զգում է միջավայրի ջերմաստիճանի փոփոխությունները, արձակում ձայներ և դրանք ընկալում հատուկ օրգաններով: Լավ զարգացած է մկանային համակարգը, որը բաղկացած է արտակարգ հաճախ կծկվելու ընդունակ ընդլայնական զոլավոր մկաններից: Ունենում են մինչև 2000 մկան (ուռենու փայտատիչ), որոնց օգնությամբ կատարում են ամենաբազմազան շարժումներ և թռչում մինչև 50 *կմ/ժ* արագությամբ: Մարսողական խողովակն սկսվում է բերանի խոռոչից, որը կարճ կլանով միանում է կերակրափողին: Վերջինիս ետին մասը շատ Մ-ի մոտ լայնանալով առաջացնում է կտնառք: Միջնաղին համեմատաբար կարճ է, այնտեղ քայքայվում է սննդանյութը և ներծծվում: Ետնաղու մեջ ներծծվում են ջուրը, որոշ նյութեր և ձևավորվում է կղանքը:

Շնչառության համակարգը կազմված է մարմնի բոլոր մասերում ճյուղավորված բազմաթիվ օդատար խողովակներից՝ տրախեաներից: Մարմնի կողքերում գտնվող շնչանցքերից օդը մտնում է տրախեաները և անմիջապես հասնում հյուսվածքներին ու բջիջներին: Շնչառական շարժումների քանակը մեկ րոպեում հասնում է 20—35-ի: Մ-ի արյունատար համակարգը բաց է. մարմնի խոռոչը լցնող արյունը (հեմոլիմֆան) շարժվում է մեջքային մասում գտնվող սրտի աշխատանքի շնորհիվ: Այն մեծ մասամբ դեղնավուն է, հեմոգլոբին ունեն որոշ տեսակներ, որոնց արյունը կարմիր է: Ֆագոցիտներից բացի արյունը պարունակում է սննդարար նյութերով հարուստ բջիջներ՝ էնոցիտներ ևն: Արտաթորությունը կատարվում է մալպիգյան անոթներով (քանակը տատանվում է 2-ից մինչև 150 և ավելի), որոնց միջոցով հեռացվում են կենսագործունեության վնասակար և ոչ պիտանի նյութերը: Մ. բազմանում են սեռական ճանապարհով, կուսածնությամբ և կենդանածնությամբ: Շատ տեսակների մոտ լավ արտահայտված է սեռական երկձևությունը: Զարգանում են փուլերի փոփոխությամբ և կերպարանափոխությամբ (տես *Մետամորֆոզ*): Ոչ լրիվ կերպարանափոխությանը բնորոշ է 3 փուլ. ձու, թրթուր և հասուն

անհատ՝ իմագո: Լրիվ կերպարանափոխության ժամանակ թրթուրի և իմագոյի փուլերի միջև ընկած է հարսնյակի փուլը: Մեծ մասամբ բուսակեր են, որոշ տեսակներ սնվում են քայքայվող օրգ. նյութերով, կղանքով, լեշերով, բրդով, մոմանյութերով ևն: Կան նաև գիշատիչ արյունածուծ, մակաբույծ տեսակներ: Տարածված են ամենուրեք՝ օդում, ջրում, ցամաքում: Հայտնի է մոտ 1 մլն տեսակ, այսինքն՝ ավելի շատ, քան մնացած բոլոր կենդանիներն ու բույսերը միասին վերցրած: ՍՍՀՄ-ում տարածված է 80—100 հզ., ՀՍՍՀ-ում՝ 14—15 հզ. տեսակ:

Մեծ ու տարբեր է Մ-ի դերը բնության մեջ. բազմաթիվ տեսակներ բույսերի, մթերքների, հագուստի, թղթի ևնի վնասատուներ են, վարակիչ հիվանդությունների տարածողներ: Կան նաև օգտակար տեսակներ, որոնք մասնակցում են ծաղկավոր բույսերի փոշոտմանը, հողառաջացման պրոցեսներին, տալիս են արժեքավոր սննդանյութեր և տեխ. հումք (մեղր, մետաքս, ներկանյութ, մոմ ևն), ոչնչացնում են գյուղատնտ. վնասատուներին, մոլախոտերը ևն: Մ-ի ծագումը մինչև այժմ լրիվ պարզաբանված չէ, ենթադրվում է, որ առաջացել են բազմոտանիների անհետացած մեկ խմբից: Մ-ի ուսումնասիրությամբ զբաղվում է *միջատաբանությունը*:

Պատկերազարդումը տես 608-րդ էջից հետո՝ ներդիրում:

*Գրկ.* Լուկին Ե. Ի., Կենդանաբանություն, Ե., 1971: Шумаков Е. М. и Брянцева И. Б., Вредные и полезные насекомые, 2 изд., Л., 1968; Жизнь животных, т. 3, М., 1969.

Գ. *Ավագյան*

**ՄԻՋԱՐԿՈՒԹՅՈՒՆ**, տես *Չայնարկություն*:

**ՄԻՋԱՐԿՈՒՄ ԵՎ ԱՐՏԱՐԿՈՒՄ**, մաթեմատիկայում և վիճակագրության մեջ, որևէ մեծության մի քանի հայտնի արժեքներով մյուս արժեքները գտնելու (վերականգնելու) խնդիրը. օրինակ՝ $[x_0, x_n]$, հատվածի $x_0, x_1,\ldots, x_n (x_0<x_1<\ldots<x_n)$ կետերում (հանգույցներում) $f(x)$ ֆունկցիայի տրված $y_1, y_2,\ldots, y_n$ արժեքների միջոցով մյուս x կետերում $f(x)$ արժեքների գտնելը:

Եթե x-ը $(x_0, x_n)$ միջակայքում է, ապա խնդիրը անվանում են միջարկման, իսկ եթե միջակայքից դուրս՝ արտարկման: Հաճախ, ընդհանուր առումով, երկուսն էլ անվանում են միջարկման խնդիրներ:

Խիստ մաթ. տեսակետից այդ խնդիրներն առաջադրվում են հետևյալ կերպ. տրված են $x_0, x_1,\ldots, x_n (x_0<x_1<\ldots<x_n)$ կետերը և $y_0, y_1,\ldots, y_n$ թվերը: Պահանջվում է գտնել որոշակի դասի պատկանող մի այնպիսի $f(x)$ ֆունկցիա, որ $f(x_i)=y_i$ $(i=1, 2, \ldots, n)$: Ընդհանրապես ասած, այս դրվածքով էլ Մ. և ա-ման խնդիրներն անորոշ են՝ այդպիսի $f(x)$ ֆունկցիա կարող է գոյություն չունենալ կամ կարող են անվերջ քանակությամբ գոյություն ունենալ:

Միջարկման պարզագույն խնդիրը դրըվում է այսպես. գտնել n-րդ կարգի մի $P|_n(x)$ բազմանդամ (միջարկման բազմանդամ), որը տրված $x_0, x_1, \ldots, x_n$ կետերում ընդունի $f(x)$ ֆունկցիայի տրված $y_0, y_1,\ldots, y_n$ արժեքները: Դրվում է նաև $\Delta=|f(x)-P_n(x)|$ սխալի գնահատման խնդիր: $f(x)$-ի արժեքները $x_i$-երից տարբեր կետերում ընդունվում են մոտավորապես հավասար $P_n(x)$-ին՝ $f(x)\approx P_n(x)$: Դրվում են նաև հետևյալ խնդիրները. տրված են անվերջ քանակությամբ $x_0, x_1, \ldots (x_0<x_1<\ldots)$ հանգույցներ և տրված է $y_0, y_1,\ldots$ (անվերջ) հաջորդականությունը. գտնել այս կամ այն դասի պատկանող այնպիսի $f(x)$ ֆունկցիա, որ $f(x_i)=y_i$ $(i=0, 1, 2,\ldots)$, կամ $x_0, x_1,\ldots$ հանգույցներում տրված են ոչ միայն $f(x)$-ի $y_1, y_2,\ldots, y_n$ արժեքները, այլև՝ $f^{(m)}(x_k)$ $(m=1, 2,\ldots, n_k)$ ածանցյալները: Այս վերջին դեպքում որպես միջարկող ֆունկցիաների դաս վերցնում են ոչ միայն բազմանդամների, այլև՝ եռանկյունաչափական բազմանդամների, ռացիոնալ ֆունկցիաների կամ հատուկ տեսքի ամբողջ ֆունկցիաների դասերը: Պարզագույն դեպքում միջարկման բազմանդամը որոշվում է միարժեքորեն, բայց, նայած կոնկրետ խնդրի պահանջների, այն հարմար է գրել այս կամ այն տեսքով (բանաձևով). ըստ այդմ էլ դիտարկվում են միջարկման տարբեր բանաձևերը: ($\mu$, $\delta$, $\Delta$ նշանների մասին տես *Վերջավոր տարբերությունների հաշիվ*): Կիրառվում է այն դեպքում, երբ $f(x)$ ֆունկցիան միջարկվում է $x_{\left[\frac{n}{2}\right]}$, $x_{\left[\frac{n}{2}\right]+1}$ հանգույցներին մոտ կետերում:

Միջարկման բանաձևերը (բազմանդամները) կիրառվում են նաև մոտավոր ինտեգրման, հավասարումների մոտավոր լուծման ժամանակ ևն:

*Գրկ.* Гонгаров В. Л., Теория интерполирования и приближения функций, 2 изд., М., 1954; Крылов А. Н., Лекции, о приближенных вычислениях, 6 изд., М., 1954; Юл Дж. Э., Кендэл М. Дж., Теория статистики, пер. с англ., 14 изд., М., 1960.

**ՄԻՋԲՋՋԱՅԻՆ ՏԱՐԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, միջբջջային խոռոչներ, բուսական հյուսվածքներում օդով կամ շրջապատող բջիջներից արտադրված խեժերով, եթերայուղերով, լորձով լցված խոռոչներ: Ըստ առաջացման եղանակի տարբերում են 3 տիպի Մ. տ.: Սխիզոգեն Մ. տ., առաջանում են աճման և տարբերակման ընթացքում՝ հարևան բջիջների հեռացման հետևանքով: Հաճախ անջատումը տեղի է ունենում մի քանի բջիջների միացման տեղում՝ առաջացնելով 3—4 անկյունանի (լայնական կտրվածքում), երկար ու նեղ խոռոչներ: Բջիջների հետագա հեռացման շնորհիվ Մ. տ. մեծանում են: Այդպես են առաջանում *հերձանցքերի* ճեղքերը, ջրային բույսերի օդային խոռոչները, փշատերև բույսերի խեժային խողովակները, բարդածաղկավորների և հովանոցազգիների արտազատական խողովակները ևն: Լիզիգեն Մ. տ. գոյանում են մի խումբ բջիջների լուծման հետևանքով. օրինակ՝ էվկալիպտի և ցիտրուսների պտղապատյանների արտաքին շերտում գտնվող արտազատական զետեղարանները: Ռեքսիգեն Մ. տ. բջիջների պատռման և հետագա մահացման արդյունքն են: Այդպես են առաջանում բազմաթիվ հացազգիների և շրթնածաղկավորների միջհանգույցների խոշոր խոռոչները: Երբեմն Մ. տ., սխիզոգեն առաջանալով, մեծանում են լիզիգեն կամ ռեքսիգեն ճանապարհով: Մ. տ. նպատակահարմար գոյացություններ են, ապահովում են գազափոխանակությունը և գոլորշիացումը, ինչպես նաև ծառայում են որպես բույսերի նյութերի փոխանակության արգասիքների զետեղարան:

**ՄԻՋԵՐԿՐԱԿԱՆ ԾՈՎ**, Միջերկրական, Ատլանտյան օվկիանոսի միջմայրցամաքային ծով, միացած է նրա հետ Ջիբրալթարի նեղուցով: Տարածությունը 2500 հզ. *կմ*² է, ջրի ծավալը՝ 3839 հզ. *կմ*³, միջին խորությունը՝ 1541 *մ*, առավելագույնը՝ 5121 *մ*:

---

1. **Լագրանժի բանաձևը՝**

$$f(x)\approx P_n(x)=\sum_{k=0}^{n} y_k \frac{(x-x_0)(x-x_1)\cdots(x-x_{k-1})(x-x_{k+1})\cdots(x-x_n)}{(x_k-x_0)(x_k-x_1)\cdots(x_k-x_{k-1})(x_k-x_{k+1})\cdots(x_k-x_n)}:$$

Եթե $f(x)$-ը ունի $(n+1)$-րդ կարգի ածանցյալ և $M=\max\limits_{x\in[x_0,x_n]}|f^{(n+1)}(x)|$, ապա $\Delta\leqslant M\dfrac{|(x-x_0)(x-x_1)\cdots(x-x_n)|}{(n+1)!}$:

2. **Նյուտոնի բանաձևը՝**

Եթե $x_0, x_1,\cdots,x_n$ հանգույցները h քայլով հավասարահեռ են $(x_k=x_0+k\cdot h,\ k=0,1,\cdots,n)$, ապա՝

$$f(x)\approx P_n=y_0+\frac{t}{1!}\Delta y_0+\frac{t(t-1)}{2!}\Delta^2 y_0+\cdots+\frac{t(t-1)\cdots(t-n+1)}{n!}\Delta^n y_0$$

(այստեղ $t=\dfrac{x-x_0}{n}$, $\Delta^k$-ն k-րդ կարգի տարբերություն է):

Այս բանաձևը հարմար է $x_0$-ին մոտ x-երի համար:

3. **Ստիրլինգի բանաձևը՝**

$$t(x)\approx P_n(x)=y_0+\frac{t}{1!}\mu\delta y_0+\frac{t^2}{2!}\delta^2 y_0+\frac{t(t^2-1^2)}{3!}\mu\delta^3 y_0+\frac{t^2(t^2-1^2)}{4!}\delta^4 y_0+$$

$$+\frac{t(t^2-1^2)(t^2-2^2)}{5!}\mu\delta^5 y_0+\cdots+\frac{t^2(t^2-1^2)(t^2-2^2)\cdots(t^2-k^2+1^2)}{(2k)!}\delta^{2k} y_0$$

Ֆ ի զ ի կ ա-ա շ խ ա ր հ ա գ ր ա կ ա ն ա կ ն ա ր կ: Մ. ծ. գտնվում է Եվրասիայի և Աֆրիկայի միջև: Դարդանելի նեղուցով միացած է Մարմարա, Բոսֆորի նեղուցով՝ Սև, Սուեզի ջրանցքով՝ Կարմիր ծովերին: Առավել մասնատված են հս-արլ. ափերը: Պիրենեյան, Ապենինյան, Բալկանյան և Փոքր Ասիա թերակղզիները, Բալեարյան, Կորսիկա, Սարդինիա, Սիցիլիա, Կրետե և Կիպրոս կղզիները Մ. ծ. բաժանում են Ալբորան, Բալեարյան, Լիգուրական, Տիրենյան, Ադրիատիկ, Հոնիական, Եգեյան ծովերի և Վալենսիայի, Լիոնի, Ջենովայի, Տարանտո, Անթալիա, Իսկենդերուն, Սիդրա և Գաբես ծոցերի: Այդ ցամաքազանգվածներն ու գոգավորությունները առաջացել են ալպիական լեռնակազմության ընթացքում Թետիս օվկիանոսի տեղում, որի ամենախոշոր մնացորդն է հանդիսանում Մ. ծ.: Տիրենյան ծովի կենտրոնական մասի և եզրային խզումների հետ են կապված Վեզուվը, Լիպարյան և Պոնցիանյան կղզիների հրաբուխները: Մ. ծ-ի հատակը բաժանված է թեք լանջերով մի քանի գոգավորությունների, 2000—4000 մ խորությամբ: Ափերի երկարությամբ այդ գոգավորությունները շրջապատված են ծանծաղուտի նեղ շերտով, որոնք ընդարձակվում են Թունիսի, Սիցիլիայի, ինչպես նաև Ադրիատիկ ծովի սահմաններում:

Կ լ ի մ ա ն մերձարևադարձային է, միջերկրածովյան տիպի՝ շոգ ու չորային ամառներով, մեղմ ու խոնավ ձմեռներով: Հունվարին օդի միջին ջերմաստիճանը հս-ում 7—10°C է, հվ-ում՝ 14—16°C, օգոստոսինը, համապատասխանաբար՝ 22—24°C և 25—30°C: Ջրի ջերմաստիճանը փետրվարին հասնում է 8—17°C, օգոստոսին՝ 19—30°C: Տարեկան միջին տեղումները 400 *մմ* են (հս-արմ-ում՝ 1100—1300 *մմ*, հվ-արլ-ում՝ 50—100 *մմ*):

Ջ ր ա բ ա ն ա կ ա ն ռ ե ժ ի մ ը: Գետերից և տեղումներից ստացվող ջրի համեմատությամբ Մ. ծ-ի մակերեսից գոլորշիացող քանակի գերազանցության հետևանքով Մ. ծ-ի մակարդակը ցածրանում է, որն առաջ է բերում Ատլանտյան օվկիանոսից և Սև ծովից մակերեսային աղաթույլ և համեմատաբար թեթև ջրերի ներհոսք (Ջիբրալթարի նեղուցով՝ 42,32 հզ. *կմ*$^3$, Դարդանելի նեղուցով՝ 350 *կմ*$^3$ ջուր): Մ. ծ-ից բարձր աղիությամբ ջուրը արտահոսում է նեղուցների հատակով, համապատասխանաբար՝ 40,80 հզ. *կմ*$^3$ և 180 *կմ*$^3$: Մ. ծ. են թափվում Էբրո, Ռոն, Տիբեր, Պո, Նեղոս և այլ գետերը, որոնց ընդհանուր տարեկան հոսքը 430 *կմ*$^3$ է:

Ծ ո վ ա յ ի ն հ ո ս ա ն ք ն ե ր ի ց գլխավորը Ջիբրալթարի նեղուցի մակերեսով ներհոսող շիթն է, որն անցնելով Աֆրիկայի հս. ափերի մոտով հասնում է մինչև Լիբանան: Առանձին ծովերում բնորոշ են տեղական ցիկլոնային շրջապտույտի հոսանքներ: Մ. ծ-ի ջրի գույնը վառ կապույտ է, թափանցիկությունը՝ մինչև 60 *մ*: Աղիությունը, մեծ գոլորշիացման հետևանքով, շատ բարձր է՝ 36‰-ից (արմ-ում) մինչև 39,5‰ (արլ-ում):

Կ ե ն դ ա ն ա կ ա ն ա շ խ ա ր հ ը թվական տեսակետից համեմատաբար աղքատ է պլանկտոնի սակավության պատճառով: Սակայն ֆաունայի տեսակային կազմը շատ բազմազան է, շնորհիվ բնական պայմանների բազմազանության և հարևան ջրավազանների հետ Մ. ծ-ի կապված լինելուն: Հանդիպում են դելֆիններ, փոկեր, ծովային կրիաներ, 550 տեսակ ձկներ (շնաձուկ, սկումբրիա, հարինգ, թյուննոս, ստավրիդա ևն), որոնցից մոտ 70 տեսակը՝ էնդեմիկ, կակղամորթներից տարածված են ոստրեներ, միդիաներ, ծովարմավներ, անողնաշարավորներից՝ ութոտանիներ, կաղամարներ, թանաքաձուկ, ծովախեցգետիններ, լանգուստներ: Կան շատ մեդուզաներ, սիֆոնոֆորներ, Եգեյան ծովում՝ սպունգներ և կարմիր մարջան:

Մեծ է Մ. ծ-ի տ ն տ ե ս ա-ա շ խ ա ր հ ա գ ր ա կ ա ն ն շ ա ն ա կ ու թ յ ու ն ը, այն եվրոպական պետությունների համար հանդիսանում է Հյուսիսային Աֆրիկայի և մանավանդ Մերձավոր Արևելքի երկրների, Ավստրալիայի, Օվկիանիայի (Սուեզի ջրանցքի միջոցով) հետ հաղորդակցության կարևորագույն ուղիներից մեկը, որով ներմուծվում են մետաղի հանքանյութեր, բոքսիտներ, գյուղատնտ. հումք և առավելապես նավթ (Մ. ծ. համարվում է «նավթային ուղի»): Հիմնական նավահանգիստներն են Մարսելը, Տրիեստը, Ջենովան, որտեղ ինչպես և Սարդինիա, Սիցիլիա կղզիներում զարգացել են քիմ. և մետալուրգիական արդյունաբերության ճյուղերը: Առափնյա ծանծաղուտային գոտում սկսվել է նավթի և գազի արդյունահանումը: Մ. ծ-ի ափերին կան բազմաթիվ հանգստավայրեր (առավել հայտնի են Լազուր ափը, Բալեարյան կղզիները ևն):

**ՄԻՋԵՐԿՐԱԾՈՎՅԱՆ ԿԼԻՄԱ**, մերձարևադարձային կլիմայի տիպ՝ չոր շոգ ամառով և անձրևոտ տաք ձմեռով: Հատուկ է միջերկրածովյան երկրներին, ՍՍՀՄ-ում՝ Ղրիմի հվ-ին և Կովկասի հս-արմ. սևծովյան ափերին: Մ. կ-ի տարբերակները դիտվում են Հյուսիսային և Հարավային Ամերիկայի խաղաղօվկիանոսյան ափերի մերձարևադարձային լայնություններում, Աֆրիկայի և Ավստրալիայի հվ-արմ. շրջաններում: Մ. կ. ունեցող մարզերը ամռանը գտնվում են մերձարևադարձային անտիցիկլոնների, ձմռանը՝ ցիկլոնների ազդեցության տակ: Մ. կ. ունեցող վայրերի մեծ մասում ամառային ամիսներին օդի ջերմաստիճանը 20—25°C է, ձմռանը՝ 5—12°C: Տարեկան տեղումները՝ 400—600 *մմ* (լեռներում՝ մինչև 1000 *մմ*): Մշտական ձյունածածկույթ չի առաջանում: Աֆրիկայի հվ-արմ. մասում, Ամերիկայում և Ավստրալիայում, օվկիանոսի ազդեցության ավելացման հետևանքով, Մ. կ. բնութագրվում է ավելի զով ամառով (15—20°C) և մեղմ ձմեռով (10—15°C): Միջերկրածովյան շրջանից հվ. և արլ. ընկած երկրներում ձևավորվում է Մ. կ-ի ցամաքային տարբերակը՝ քիչ տեղումներով (տարեկան՝ 100—200 *մմ*), Առաջավոր Ասիայի բարձրավանդակում՝ ցուրտ ձմեռ: Բուսածածկույթում կան երաշտադիմացկուն շատ տեսակներ (անտառներ և մշտադալար թփեր): *Ա. Բաղդասարյան*

**ՄԻՋՆԱԴԵՐՔ** (mesenterium), *ընդերքի* ներորովայնամզային օրգանները որովայնի խոռոչի ետին պատին միացնող կապան: Կազմված է ընդերային *որովայնամզի* զույգ թերթիկներից: Մ-ի ետին եզրը ամրացած է որովայնի պատին և կոչվում է արմատ, իսկ առաջայինը ազատ գրկում է համապատասխան աղիքը: Երկու թերթիկների միջև գտնվում են տվյալ օրգանի արյան, ավշային անոթները, նյարդերն ու ավշահանգույցները: Մ-ով օժտված են՝ բարակ աղիքները, կույր աղիքը, որդանման ելունը, միջաձիգ ու սիգմայաձև խթաղիքը, ուղիղ աղիքի վերին 1/3-ը:

**ՄԻՋԻՆ ԱՄՈՒՐՅԱՆ ԴԱՇՏԱՎԱՅՐ**, Ա մ ու ր ա-Ս ու ն գ ա ր յ ա ն հ ա ր թ ա վ ա յ ր, ՍՍՀՄ Խաբարովսկի երկրամասի հարավում և Չինաստանի հյուսիս-արևելքում: Երկարությունը 670 *կմ* է, լայնությունը՝ 100—200 *կմ*: Ցամաքուրդվում է Ամուր գետով: Մակերևույթը հարթ է, ճահճակալած, տեղ-տեղ կան բլրաշարեր: Կլիման մուսսոնային է: Ծածկված է անտառներով: Մ. Ա. դ-ում է Խաբարովսկ քաղաքը:

**ՄԻՋԻՆ ԱՍԻԱ**, 1. ՍՍՀՄ ասիական տերիտորիայի մաս: Գտնվում է արմ-ից Կասպից ծովի, արլ-ից՝ ՍՍՀՄ և Չինաստանի պետ. սահմանի, հս-ից՝ Արալա-Իրտիշական ջրբաժանի և հվ-ից՝ Իրանի ու Աֆղանստանի հետ ՍՍՀՄ պետ. սահմանի միջև: Մինչև 1924—25-ը կոչվում էր *Թուրքեստան*, որը հետագայում, ի տարբերություն *Կենտրոնական Ասիայի*, կոչվեց Մ. Ա.: Նրա մեծ մասը հարթավայր է՝ զբաղեցված Թուրանի դաշտավայրով, որին հս-արլ-ից սահմանակցվում են Բալխաշ—Ալակոլի ավազանի հարթավայրերը, հս-ից՝ Տուրգայան սարավանդի հվ. մասը և Ղազախական մանրաբլուրները կիսաանապատային և չոր տափաստանային լանդշաֆտներով: Հարթավայրային մասի բարձրությունը 28 *մ*-ից (Կասպից ծովի արլ. ափ) մինչև 300 *մ* է: Առանձին փակ իջվածքների հատակը իջնում է մինչև —132 *մ* (Կարագիե), —81 *մ* (Ակչաայա), իսկ կղզային լեռները Կզըլկում անապատի կենտրոնական մասում բարձրանում են մինչև 922 *մ* (Տամդիտաու լեռ): Մ. Ա-ի հվ-արլ. մասն զբաղեցնում են Տյան Շանի (Հաղթանակի պիկ, 7439 *մ*) և Պամիրա-Ալայի (Կոմունիզմի պիկ, 7495 *մ*, ՍՍՀՄ ամենաբարձր լեռնագագաթը) լեռնային համակարգերը: Մ. Ա-ի հվ. սահմանի երկարությամբ ձգվում է Կոպետդաղի լեռնաշղթան (մինչև 2942 *մ*): Կան նավթի, գազի, ոսկու, բազմամետաղների, գունավոր և հազվագյուտ մետաղների, ածխի հանքավայրեր: Կլիման հարթավայրային մասում անապատային և կիսաանապատային է, լեռներում հանդես է գալիս կլիմայական ուղղաձիգ գոտիականությունը: Մ. Ա. ներքին հոսքի մարզ է: Խոշոր լճերն են Արալյան ծովն ու Բալխաշը, գետերը՝ Ամուդարյան, Սիրդարյան և Իլին: Թուրանի հարթավայրում և Բալխաշ-Ալակոլյան ավազանում տիրապետում են անապատային լանդշաֆտները, հս-ում և հվ-ում՝ մերձարևադարձային անապատները: Անապատային հարթավայրերն օգտագործվում են արոտավայրերի և ոռոգելի հողագործության համար:

2. Մ. Ա.: Տարածություն. ընդգրկում է *Ուզբեկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության*, *Կիրգիզական*

*Սովետական Սոցիալիստական Հանրապետության*, *Տաջիկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության* և *Թուրքմենական Սովետական Սոցիալիստական Հանրապետության* տարածքները, որոնք միասին կազմում են Միջինասիական տնտ. շրջանը:

Բնակչությունը: Բնակչության ընդհանուր թիվը՝ 25,470 մլն (1979): Խտությունը տատանվում է 1—3-ից (անապատային և կիսաանապատային շրջաններում) մինչև 278 մարդ (Ուզբ. ՍՍՀ-ի Անդիժանի մարզում): Քաղաքներում բնակվում է բնակչության 40,8%-ը: 1940—1970-ի ընթացքում բնակչությունն ավելի քան կրկնապատկվել է, իսկ 1959-ից ավելացել է մոտ 11,6 մլն-ով, որը հետևանք է ինչպես ՍՍՀՄ-ում ամենամեծ ծնելիության (3—3,5%), այնպես էլ միգրացիոն երևույթների (1953—74-ը Մ. Ա-ում և Ղազախստանում բնակություն են հաստատել մոտ 1,2 մլն մարդ):

Մ. Ա-ի ժողովուրդներն ունեն պատմական ճակատագրի ընդհանրության և էթնիկական ազգակցության հետևանքով առաջացած նյութական ու հոգևոր մշակույթի ընդհանուր շատ գծեր: Էթնիկական զարգացման երկարատև երևույթի, բնակչության տեղաշարժի, պատմական տարբեր ժամանակներում Մ. Ա-ում հարևան երկրների ժողովուրդների զգալի խմբերի բնակություն հաստատելու հետևանքով այստեղ կազմավորվեցին խոշոր ազգություններ, որոնց մի մասը մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը սկսել էին ձևավորվել որպես բուրժ., իսկ սովետական կարգերի օրոք՝ սոցիալիստական ազգեր (*ուզբեկներ*, *տաջիկներ*, *կիրգիզներ*, *թուրքմեններ*, *կարակալպակներ*), որոնցից յուրաքանչյուրը սովետական իշխանության տարիներին ստացավ պետականություն: Մ. Ա-ում զգալի թիվ են կազմում ռուսները, ինչպես նաև թաթարները, բաշկիրները, մորդվաները, հայերը, ադրբեջանցիները, կան նաև կորեացիներ, ույգուրներ, դունգաններ, արաբներ, բելուջներ, քրդեր, իրանցիներ ևն: Մ. Ա-ի բոլոր հանրապետությունները բազմազգ են: Բնակչության մոտ 70%-ը (ուզբեկներ, կիրգիզներ, թուրքմեններ, կարակալպակներ, ղազախներ, թաթարներ, ույգուրներ) խոսում է ալթայան ընտանիքի թյուրքական խմբի լեզուներով, 11%-ը՝ հնդեվրոպական ընտանիքի իրանական խմբի լեզուներով (տաջիկներ, յագնոբցիներ և մերձպամիրյան ազգություններ, քրդեր, բելուջներ): Դունգանները խոսում են չինարենի բարբառներից մեկով, կորեացիները՝ մայրենի լեզվով, հրեաները՝ տաջիկերենի հատուկ խոսվածքով, արաբները՝ ուզբեկերեն կամ տաջիկերեն, գնչուները՝ տաջիկերեն: Բնակչության 17%-ը կազմում են ռուսներն ու ուկրաինացիները, որոնք, բացի իրենց մայրենի լեզվին տիրապետելուց, խոսում են շրջապատող բնակչության լեզուներով:

Մ. Ա-ի բնակչությունը մարդաբանական առումով տարասեռ է: Տաջիկները և ուզբեկները եվրոպեոիդներ են, պատկանում են պամիրոֆերգանական ռասային, կիրգիզները, ղազախները և կարակալպակները՝ հարավսիբիրական ռասային, թուրքմենները՝ եվրոպեոիդ ռասայի միջերկրածովյան խմբին՝ մոնղոլոիդների որոշ գծերով: Անցյալում Մ. Ա-ի բնակչության մեծ մասը դավանում էր մահմեդականություն:

**ՄԻՋԻՆ ԱՍԻԱՅԻ ԱԶԳԱՅԻՆ ՊԵՏԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄ**, տերիտորիալ-պետական վերափոխություններ 1924—1925-ին Միջին Ասիայում: Իրականացրել է սովետական պետությունը համաձայն Միջին Ասիայի ժողովուրդների ազատ կամքի և կոմունիստական կուսակցության անցկացրած ազգային քաղաքականության: Ազգային-պետական բաժանման իրականացման կարևոր քայլերից էր *Թուրքեստանի Ինքնավար Սովետական Սոցիալիստական Հանրապետության* (ՌՍՖՍՀ-ի կազմում, 1918), *Բուխարայի Ժողովրդական Սովետական Հանրապետության*, *Խորեզմի Ժողովրդական Սովետական Հանրապետության* (1920) ստեղծումը, որոնց տարածքները սահմանազատված չէին ըստ ազգային պատկանելության: Միջին Ասիայի տարածքի ազգային-պետական բաժանման նախապատրաստման և անցկացման ընթացքում Վ. Ի. Լենինը կուսակցությանը կողմնորոշում էր բազմակողմանիորեն հաշվի առնել տեղական պայմանները, աշխատավորների ցանկությունները: 1920-ական թթ. կեսին արդեն առկա էին բոլոր նախադրյալները (վերացվել էր *բասմաչությունը*, ամրապնդվել բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, սոցիալիստական էին դարձել Խորեզմի և Բուխարայի ժող. հանրապետությունները, ՌԿ(բ)Կ-ի մեջ էին մտել նրանց կուսակցությունները, ստեղծվել էր ՌԿ(բ)Կ միջինասիական բյուրո, սկսվել էր միասնական տնտ. գործունեություն) Մ. Ա. ա. պ. բ. անցկացնելու համար: 1924-ի հունիսի 12-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմը որոշում ընդունեց «Միջին Ասիայի հանրապետությունների ազգային սահմանազատման մասին», որից հետո սկսվեց բացատրական-ագիտացիոն աշխատանքը: Այն ընթանում էր ազգայնականների և ազգայնամոլների դեմ սուր պայքարում, բեկերը, հոգևորականները հանդես էին գալիս *պանիսլամիզմի* դիրքերից, պայքարում «Մեծ Ուզբեկստան», «Մեծ Ղազախստան» ստեղծելու համար: Կուսակցությունը վճռականորեն մերժեց նացիոնալ-ուկլոնիստների այդ փորձերը: 1924-ի սեպտեմբերին վերջացան նախապատրաստական աշխատանքները: ՍՍՀՄ Կենտգործկոմի II գումարման 2-րդ նստաշրջանը լսեց միջինասիական հանրապետությունների և ՌՍՖՍՀ իշխանության գերագույն մարմինների որոշումները և դրանք ընդունեց որպես պետ. օրենք:

Սահմանազատման հետևանքով 1924—1925-ին Թուրքեստանի, Բուխարայի և Խորեզմի հանրապետությունների տերիտորիաներից կազմավորվեցին Ուզբեկական և Թուրքմ. ՍՍՀ-ները, Ուզբեկական ՍՍՀ-ի կազմում՝ Տաջ. ԻՍՍՀ, Կարա-Կիրգիզական ԻՄ ՌՍՖՍՀ կազմում 1925-ին վերանվանվեց Կիրգ. ԻՄ (1926-ին՝ Կիրգ. ԻՍՍՀ), Կարակալպակյան ԻՄ, և ղազախներով բնակեցված Թուրքեստանի ԻՍՍՀ շրջանները մտան Ղազախական ԻՍՍՀ-ի մեջ (մինչև 1925-ը կոչվել է Կիրգ. ԻՍՍՀ): Թուրքմ. ՍՍՀ և Ուզբեկական ՍՍՀ մտան ՍՍՀՄ-ի մեջ 1925-ին: Սոցիալիստական շինարարության հետագա տարիներին Տաջ. ԻՍՍՀ (1929), Ղազախական ԻՍՍՀ և Կիրգ. ԻՍՍՀ (1936) վերածվեցին միութենական հանրապետությունների, իսկ Կարակալպակյան ԻՄ՝ Կարակալպակյան ԻՍՍՀ-ի (1932) ՌՍՖՍՀ կազմում (1936-ից՝ Ուզբեկական ՍՍՀ-ի կազմում): Արդյունքում ուզբեկներով, ղազախներով, տաջիկներով, թուրքմեններով, կարակալպակներով բնակեցված տարածքները միավորվեցին համապատասխան սովետական ազգային պետ. կազմավորումներում: Այդ իրադարձությունը նպաստեց միջինասիական ժողովուրդներին սոցիալիզմի շինարարության մեջ ներգրավելուն, նրանց տնտ. կապերի ամրապնդմանը և զարգացմանը, արագացրեց սոցիալիստական ազգերի կազմավորումը, հարստացրեց ՍՍՀՄ-ում ազգային հարցի հեղափոխական լուծման պատմական փորձը:

**ՄԻՋԻՆ ԱՍՏՂԱՅԻՆ ԺԱՄԱՆԱԿ**, տես *Ժամանակ*:

**ՄԻՋԻՆ ԱՐԵՎԵԼՔ**, Եվրոպայի և Պակիստանի միջև գտնվող Արևմտյան Ասիայի պայմանական անվանումը: Երբեմն, հատկապես անգլ. և ամերիկյան գրականության մեջ, փոխարինվում է *«Մերձավոր Արևելք»* տերմինով, բայց հաճախ հասկացվում է որպես Միջին Արևելքի երկրների ամբողջությունը Իրանի ու Աֆղանստանի հետ և այդ պատճառով էլ մեծ մասամբ օգտագործվում է ոչ թե առանձին, այլ «Մերձավոր և Միջին Արևելք» միացյալ տերմինի կազմում:

**ՄԻՋԻՆ ԳԻԾ**, 1. Եռանկյան, եռանկյան որևէ երկու կողմերի միջնակետերը միացնող հատվածը (մյուս՝ երրորդ կողմը անվանում են հիմք): Եռանկյան Մ. գ. զուգահեռ է հիմքին և հավասար է նրա կեսին: 2. Սեղանի, սեղանի ոչ զուգահեռ կողմերի միջնակետերը միացնող հատվածը: Սեղանի Մ. գ. զուգահեռ է հիմքերին (զուգահեռ կողմերին) և հավասար դրանց կիսագումարին:

**ՄԻՋԻՆ ԴԱՆՈՒԲՅԱՆ ԴԱՇՏԱՎԱՅՐ**, գտնվում է Դանուբ գետի միջին հոսանքի ավազանում, Հունգարիայի (մեծ մասը), Չեխոսլովակիայի, Ռումինիայի, Հարավսլավիայի և Ավստրիայի սահմաններում: Հս-արլ-ում մտնում է Ուկր. ՍՍՀ-ի Անդրկարպատյան մարզի մեջ: Տարածությունը մոտ 200 հզ. *կմ*$^2$ է, բարձրությունը՝ 100—200 *մ*: Միջլեռնային տեկտոնական իջվածք է: Կազմված է նեոգենի կրաքարերից, ավազաքարերից և կավերից, ծածկված պլեյստոցենի լյոսային, ավազակավային գոյացություններով: Կան բոքսիտների, նավթի, այրվող գազի, գորշ ածխի հանքավայրեր: Կլիման չափավոր ցամաքային է, արլ-ում՝ չոր: Հունվարի միջին ջերմաստիճանը —1°C-ից —2°C է, հուլիսինը՝ 20—22°C, տարեկան տեղումները՝ 500—600 *մմ* (լեռներում՝ մինչև 900 *մմ*): Տիրապետում են սևահողերն ու ալյուվիալ հողերը: Տարածքի 70—80%-ը մշակվում է: Առավել նշանավոր քաղաքներն են Բուդապեշտը, Զագրեբը, Բրատիսլավան, Տիմիշոարան:

**ՄԻՋԻՆ ԵՎՐՈՊԱԿԱՆ ՀԱՐԹԱՎԱՅՐ**, գտնվում է հիմնականում Լեհաստանի, ԳԴՀ, ԳՖՀ հյուսիսում և Դանիայում:

Սահմանափակված է հս-ում Հյուսիսային և Բալթիկ ծովերով, հվ-ում՝ Հերցինյան Եվրոպայի լեռներով ու բարձրություններով: Երկարությունը արմ-ից արլ. մոտ 600 *կմ* է, լայնությունը՝ 200-ից մինչև 500 *կմ*, գերիշխում են 50—100 *մ* բարձրությունները (առանձին մորենային թմբեր՝ ավելի քան 300 *մ*): Կազմված է կրաքարերից և ավազաքարերից, ծածկված՝ սառցադաշտային նստվածքներով: Կլիման բարեխառն է, անցումային՝ ծովայինից ցամաքայինի: Հունվարի միջին ջերմաստիճանը արմ-ում —1-ից մինչև —3°C է, արլ-ում՝ —2-ից մինչև —4°C, հուլիսինը՝ ամենուրեք 17—19°C, տարեկան տեղումները արմ-ից արլ. պակասում են՝ 800-ից մինչև 500 *մմ*: Ձնածածկույթը արմ-ում հաստատուն չէ, արլ-ում՝ 1,5—2 ամիս: Գետային ցանցը (Օդրայի, Էլբայի, Վեզերի, Հռենոսի ավազաններ են) խիտ է: Շատ են սառցադաշտային ծագման լճերը: Հողերը գորշ անտառային և պոդզոլային են: Բուսածածկույթը՝ հս-ում հավամրգի և տորֆաճահճային տեսակներ, արլ-ում և արմ-ում՝ անտառներ, գետահովիտներում՝ մարգագետիններ: Զբաղվում են հացահատիկի, շաքարի ճակնդեղի մշակությամբ, անասնապահությամբ: Մ. Ե. հ. խիտ բնակեցված է: Խոշոր քաղաքներն են Պոզնանը (Լեհաստան), Բեռլինը (ԳԴՀ), Արևմտյան Բեռլինը (հատուկ քաղաքական միավոր), Համբուրգը, Բրեմենը, Հանովերը (ԳՖՀ), Ամստերդամը, Ռոտերդամը (Նիդեռլանդներ):

**ՄԻՋԻՆ ԿՈՐՈՒԹՅՈՒՆ** մակերևույթի՝ նրա որևէ կետում. այդ կետում մակերևույթի գլխավոր կորությունների կիսագումարը: Գլխավոր կորությունները մակերևույթի M կետով անցնող նորմալով տարված հարթությունների և մակերևույթի հատումից ստացված հատույթների կորություններից (նորմալ կորություններից) ամենամեծը և ամենափոքրն են:

Եթե E, F, G-ն մակերևույթի առաջին քառակուսային ձևի գործակիցներն են, իսկ L, M, N-ը՝ երկրորդ քառակուսային ձևի, ապա Մ. կ.՝ H-ը, որոշվում է

$$H=\frac{EN-2FM+GL}{2(GE-F^2)}$$

բանաձևով:

Եթե մակերևույթի յուրաքանչյուր կետում Մ. կ. հավասար է 0-ի, ապա այն անվանում են *նվազագույն մակերևույթ*:

**ՄԻՋԻՆ ՀԱՄԵՄԱՏԱԿԱՆ**, տես *Միջիններ*:

**ՄԻՋԻՆ ՀԱՅԵՐԵՆ**, հայոց լեզվի պատմական զարգացման XII—XVI դարերն ընդգրկող ժամանակաշրջանի լեզվական որակի անվանումը: Որպես միջբարբառային գրական և խոսակցական լեզու տարածվել է XII դ., թեև նրա առանձին տարրերը ձևավորվել են ավելի վաղ, դեռևս *գրաբարի* տիրապետության շրջանում: Կիլիկիայի Հայկական թագավորության ստեղծման հետ կապված՝ բարձրացել է պետ. լեզվի աստիճանի: Որպես *գրական լեզու*, որոշ տարբերակումներով, տիրապետող է դարձել նաև պատմական Հայաստանի ամբողջ տարածքում և գաղթավայրերում: Մ. հ-ի զարգացումն ընդունված է բաժանել 2 ենթաշրջանի. 1. XII—XIV դդ., երբ այն գործածվել է որպես պետ. լեզու, ձգտել է մշակման և նորմավորման, 2. XV—XVI դդ., երբ զրկվել է նշված գործառույթից, ենթարկվել է տարբեր բարբառների ազդեցությանը, կորցրել միասնական զարգացման հնարավորությունը: Մ. հ. վկայված է հարուստ և բազմաժանր գրավոր աղբյուրներով (գեղարվեստական արձակ և չափածո երկեր, գիտական և պատմական աշխատություններ, ձեռագրերի հիշատակարաններ, վավերագրեր, վիմագիր արձանագրություններ են): Որպես գրական լեզու Մ. հ. պատմական անբարենպաստ պայմանների հետևանքով չհասավ մշակման և նորմավորման բարձր աստիճանի: Գրավոր աղբյուրներում նկատվում է գրաբարի և Մ. հ-ի քերականական կառուցվածքների փոխներթափանցում, ձևերի անմիօրինակություն, քերականական իմաստների բազմաձևություն: Գրաբարի համեմատությամբ Մ. հ-ի կառուցվածքը կրել է հետևյալ փոփոխությունները. հնչյունական համակարգում ավելացել են **օ** և **ֆ** հնչյունները, ձայնեղ բաղաձայնները խլացել են, խուլերը՝ ձայնեղացել, երկբարբառները հիմնականում պարզվել են, բազմավանկ բառերի միջին վանկերի ձայնավորները՝ սղվել: Ձևաբանական համակարգում հետզհետե գերակշռել են կցական տարրերը, առաջացել են հոլովման նոր տիպեր (ոջ, վան, ան, եան), մեծ չափով ընդլայնվել է **ի** հոլովման կիրառությունը, տարածվել են գործիականի **ով**, բացառականի **է** վերջավորությունները, սկսել է ակտիվանալ **ում** վերջավորությամբ ներգոյականը: Հոգնակի թիվն սկսել է կազմվել **եր**, **ներ**, **նի**, **ստան**, **վի**, **տի** և այլ հոգնակերտներով: Խոնարհման համակարգի բնորոշ հատկանիշներն են **կու** մասնիկով ներկան, կրավորականի **վ** ածանցը, **ած** մասնիկով հարակատար և **ել(եր)** մասնիկով վաղակատար դերբայները, անկանոն բայերի նվազումը, ժամանակային նոր ձևերի առաջացումը, գրաբարի ստորադասական եղանակի վերացումը են: Բառապաշարի մեջ զգալի տեղ են գրավում նոր փոխառությունները պարսկերենից, արաբերենից, եվրոպական լեզուներից:

*Գրկ.* Աճառյան Հ., Հայոց լեզվի պատմություն, մաս 2, Ե., 1951: Ղազարյան Ս., Միջին հայերեն, գիրք 1, Ե., 1960: Ակնարկներ միջին գրական հայերենի պատմության, հ. 1—2, Ե., 1972—75: *Լ. Հովսեփյան*

**ՄԻՋԻՆ ՄԵԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ** վիճակագրության մեջ, ընդհանրացնող ցուցանիշներ, տեղի ու ժամանակի կոնկրետ պայմաններում որակապես միասեռ երևույթի մեկ միավորի հաշվով քանակապես փոփոխվող հատկանիշի տիպային մակարդակ: *Վիճակագրության* մեջ Մ. մ-ի կիրառման անհրաժեշտ պայմաններն են՝ ա. *միջինների* օգնությամբ ընդհանրացվող օբյեկտների որակական միասեռություն, բ. ընդհանուր միջինների լրացում համակցության առանձին մասերը բնութագրող մասնակի, խմբային միջիններով, գ. միջինից անհատական շեղումների ուսումնասիրում, դ. նոր որակի առաջացման, քանակից որակի անցման պրոցեսի արտացոլում: Միջինացվող հատկանիշի բնույթից և ունեցած տվյալներից կախված կիրառվում են Մ. մ-ի տարբեր տեսակներ. թվաբանական, երկրաչափական, ներդաշնակ ու քառակուսային միջիններ, մոդա ու *միջնարժեք*:

**ՄԻՋԻՆ ՆՈՐՈԳՈՒՄ**, պլանային նորոգման տարատեսակ. հիմնական ֆոնդերի կամ անձնական երկարատև օգտագործման առարկաների սպառողական արժեքի վերականգնում և պահպանում: Մ. ն-ման ժամանակ ստուգվում է սարքավորումների հանգույցների տեխ. վիճակը, փոխարինվում կամ վերականգնվում են մաշված մասերը, վերացվում բացահայտված թերությունները, կատարվում են նաև ընթացիկ նորոգման աշխատանքներ: Մ. ն. իրականացնում են շարժական և ստացիոնար նորոգման ծառայությունները: Նորոգման պարբերականությունը մեկ տարուց ավելի լինելու դեպքում, այն կատարվում է տարեկան ամորտիզացիոն հատկացումների, մյուս դեպքերում՝ ձեռնարկության ընթացիկ ծախսերի հաշվին:

**ՄԻՋԻՆ ՌՈՒՍԱԿԱՆ ԲԱՐՁՐՈՒԹՅՈՒՆ**, ՍՍՀՄ եվրոպական մասի կենտրոնական մասում: Երկարությունը մոտ 1000 *կմ* է, լայնությունը՝ մինչև 500 *կմ*, բարձրությունը՝ 220—250 *մ* (առավելագույնը՝ 293 *մ*): Մինչքեմբրյան բյուրեղային հիմքը ծածկված է յուրաննման ավազակավերով և յուսերով: Մ. Ռ. բ-ում են Կուրսկի մագնիսական անոմալիայի երկաթահանքերը, կա գորշ ածուխ: Ունի էրոզիոն ռելիեֆ, մասնատված է խորը գետահովիտներով ու հեղեղատներով: Հանդիպում են կարստային ձևեր, հս-ում՝ մորենային նստվածքներ: Մ. Ռ. բ-ից սկիզբ են առնում Սև, Ազովի և Կասպից ծովերի ավազանների գետերը՝ Օկան, Դեսնան, Սեյմը, Պսյոլը, Դոնը են: Մ. Ռ. բ. գտնվում է անտառային, անտառատափաստանային և տափաստանային զոնաներում: Տարածված են սևահողերը: Տարածությունը հերկված է: Այստեղ են Վ. Վ. Ալյոխինի անվ. կենտրոնասևահողային և Գալիչյա գորա արգելանոցները:

**ՄԻՋԻՆ ՍԻԲԻՐԱԿԱՆ ՍԱՐԱՀԱՐԹ**, Հյուսիսային Ասիայի կենտրոնական մասում, Արևելյան Սիբիրում: Եզրավորվում է Արևելյան Սայանների, Մերձբայկալի և Հյուսիսային Անդրբայկալի լեռներով, Հյուսիս-Սիբիրական դաշտավայրով, Արևմտա-Սիբիրական և Կենտրոնական Յակուտական հարթավայրերով: Տարածությունը մոտ 3,5 մլն *կմ*² է: Գտնվում է Սիբիրական պլատֆորմի սահմաններում: Տափարակ ընդարձակ միջագետք է՝ 500—700 *մ* միջին և 1701 *մ* (Պուտորանա սարավանդ)՝ առավելագույն բարձրությամբ: Առավել բարձրադիր մասերը (Պուտորանայի, Վիլյույի սարավանդներ, Ենիսեյի բլրաշար են) գտնվում են հս-արմ-ում: Կան նիկելի, պղնձի, երկաթի, ոսկու, ալմաստի, քարածխի, գրաֆիտի, քարաղի, բնական գազի հանքավայրեր: Կլիման խիստ ցամաքային է: Ձմեռը ցուրտ է, երկարատև: Հունվարի միջին ջերմաստիճանը —20°C-ից —44°C է, հուլիսինը՝ 12—20°C: Տարեկան տեղումները արլ-ում 200—350 *մմ* են, արմ-ում՝ 400—500 *մմ*, Պուտորանա սարավանդում՝ 700—800 *մմ*: Գետերը մեծ մասամբ ջրառատ, արագընթաց և սահանքավոր են: Խոշոր գետերն են

Ստորին Տունգուսկան, Պոդկամեննայա Տունգուսկան, Անգարան, Լենան՝ Վիլյույի հետ, Խատանգան, Անաբարը: Մեծ տարածում ունի բազմամյա սառածությունը: Գերակշռում է տայգան՝ թույլ պոդզոլացած և ճմապոդզոլացած հողերով ու խճաժայռային անտառներով: Հս-ում տարածված է լեռնային տունդրան: Հվ-ում կան սոճու անտառներ և անտառատափաստանների «կղզիներ»: Բնորոշ կենդանիներից են լեմինգը, բևեռաղվեսը, սպիտակ նապաստակը, հս. եղջերուն, որմզդեղնը, զորշ արջը ևն: Կան շատ թռչուններ, գետերը հարուստ են ձկներով: Արդյունագործական նշանակություն ունեն սկյուռը, սամույրը, մշկամուկը:

**ՄԻՋԻՆՆԵՐ**, միջին արժեքներ, թվերի կամ ֆունկցիաների համախմբություն, ինչպես նաև ֆունկցիայի թվային բնութագրիչներ:

1. Տրված $x_1, x_2, \ldots, x_n$ թվերի համախմբության միջին կոչվում է այդ թվերից ամենափոքրի և ամենամեծի միջև ընկած յուրաքանչյուր թիվ: Առավել գործածական են. թվաբանական միջինը՝

$$A=A(x_1, x_2, \ldots, x_n)=\frac{x_1+x_2+\ldots+x_n}{n},$$

երկրաչափական միջինը՝

$$G=G(x_1, x_2, \ldots, x_n)=\sqrt[n]{x_1\cdot x_2\ldots x_n},$$

ներդաշնակ (հարմոնիկ) միջինը՝

$$H=H(x_1, x_2, \ldots, x_n)=\frac{n}{1/x_1+1/x_2+\ldots+1/x_n},$$

քառակուսային միջինը՝

$$Q=Q(x_1, x_2, \ldots, x_n)=\sqrt{\frac{x_1^2+x_2^2+\ldots+x_n^2}{n}}:$$

Եթե $x_1, x_2, \ldots, x_n$ թվերը դրական են, ապա ցանկացած $\alpha\neq 0$ թվի համար մտցըվում է ($\alpha$) աստիճանային միջին՝

$$S_\alpha=S_\alpha(x_1, x_2, \ldots, x_n)=\left(\frac{x_1^\alpha+x_2^\alpha+\ldots+x_n^\alpha}{n}\right)^{\frac{1}{\alpha}},$$

որը $\alpha$-ի 1,—1 և 2 արժեքների դեպքում համապատասխանաբար համընկնում է թվաբանական, ներդաշնակ և քառակուսային միջինների հետ ($S_1=A$, $S_{-1}=H$, $S_2=Q$): Երբ $\alpha\to 0$, $S_\alpha$($\alpha$-ից) ֆունկցիան ձգտում է G-ին. հետևաբար կարելի է ընդունել՝ $S_0=G$: Կարևոր է հետևյալ անհավասարությունը՝ եթե $\alpha\leqslant\beta$, ապա $S_\alpha\leqslant S_\beta$, որից հետևում է, որ

$$H\leqslant G\leqslant A\leqslant Q:$$

Երկու՝ a և b դրական թվերի երկրաչափական միջինը՝ $\sqrt{ab}$-ն, անվանում են նաև այդ թվերի միջին համեմատական, քանի որ այն մի այնպիսի x թիվ է, որը բավարարում է $a:x=x:b$ համասարմանը:

2. Ֆունկցիայի միջին արժեք, անվանում են ցանկացած թիվ, որը ընկած է ֆունկցիայի մեծագույն և փոքրագույն արժեքների միջև: [a,b] հատվածի վրա տրված f(x) ֆունկցիայի թվաբանական միջին կոչվում է

$$A(f)=\frac{1}{b-a}\int_a^b f(x)dx$$

թիվը, իսկ երկրաչափական միջին՝

$$G(x)=\exp\left\{\frac{1}{b-a}\int_a^b \ln f(x)dx\right\}$$

թիվը (այս դեպքում ենթադրվում է, որ f(x)-ը դրական է): Տեղի ունի $G(f)\leqslant A(f)$ անհավասարությունը:

Հանգունորեն սահմանվում է որևէ տիրույթում տրված մի քանի փոփոխականի ֆունկցիայի Մ.:

**ՄԻՋԻՆՔ**, միջունք, Մեծ *պասի* կեսը՝ չորրորդ շաբաթվա չորեքշաբթին: Առանձին տոնական նշանակություն չունի: Հատկանշվում է նշանված տղաների տներից հարսնացուներին նվերներ ուղարկելով և ծիսական հաց (բաղարջ) թխելով:

*Ժ. Խաչատրյան*

**ՄԻՋԼԵՌՆԱՅԻՆ ՃԿՎԱԾՔ**, տես *Ճրկվածք*:

**ՄԻՋԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ՄԻԱՎՈՐՈՒՄՆԵՐ**, միջկոլտնտեսային ձեռնարկությունների և կազմակերպությունների կառավարման ձև. դրանց գործունեությունը միավորում են շրջանի, մարզի, երկրամասի և հանրապետության մասշտաբով: Իրականացնում են ստորադաս միավորումների տնտ. ղեկավարումը, արտադրական ու ֆինանսական գործունեության վերահսկողությունը ևն: Առաջացել և զարգացել են միջկոլտնտեսային ձեռնարկությունների և կազմակերպությունների գործունեության ընդլայնման հետևանքով: Առավել տարածված են շինարարության մեջ: 1978-ի վերջին ՍՍՀՄ-ում գործում էին 530 Մ. մ., դրանց կից՝ 1101 շինարարական-մոնտաժային վարչություն, շինարարական վարչություն և շարժական մեքենայացված շարասյուն, շինանյութերի արտադրության 515 ձեռնարկություն, նախագծային 97 ինստ. և գրասենյակ, նյութատեխնիկական մատակարարման 181 գրասենյակ ևն: Լայն տարածում են ստանում անասնաբուծման, գյուղատնտ. արտադրանքի վերամշակման Մ. մ.: Միավորումների այդպիսի տիպեր ստեղծվում են նաև եվրոպական սոցիալիստական մյուս երկրներում:

**ՄԻՋԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության տարատեսակ, որը գոյացել է միջկոլտնտեսային կազմակերպությունների առաջացման և հետագա զարգացման ընթացքում: Մ. ս-յան զարգացմամբ կոոպերատիվ սեփականությունն աստիճանաբար վեր է ածվում համաժողովրդականի, պայմաններ են ստեղծվում կազմակերպելու ագրարային-արդյունաբերական միավորումներ: Մ. ս. նպաստում է կոլտնտեսությունների կապիտալ ներդրումների ու աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանը, կենտրոնացնում նրանց ջանքերը ժամանակակից արդ. տիպի արտադրություն կազմակերպելու հարցում: Տես նաև *Միջտնտեսային ձեռնարկություններ և կազմակերպություններ*:

**ՄԻՋՀԱՐԿԱՅԻՆ ԾԱԾԿ**, շենքերի ու կառույցների հիմնական կոնստրուկտիվ մաս: Մ. ծ. շենքն ըստ բարձրության բաժանում է հարկերի. ներքևի հարկի համար այն ծառայում է որպես առաստաղ, իսկ վերևվինի համար՝ հատակ: Ըստ ծառայության բնույթի Մ. ծ. ունի բեռնվածք կրելու որոշակի ունակություն, կոշտություն, անջրաթափանց է, ջերմա- ու ձայնամեկուսիչ և հրակայուն: Մ. ծ-ի համար որպես շինանյութ օգտագործում են փայտ, մետաղ, երկաթբետոն, բնական ու արհեստական քարեր, ձայնա- ու ջերմամեկուսիչ նյութեր և հատակի ու առաստաղի տարրեր: Ըստ կոնստրուկտիվ լուծումների Մ. ծ-երը լինում են հեծանային (որտեղ *հեծանների* վրա կամ դրանց միջև տեղադրում են առաստաղի ու հատակի տարրեր), առանց հեծանի, երկաթբետոնե հավաքովի սալերով, երկաթբետոնե հավաքովի միաձույլ և միաձույլ երկաթբետոնե: Բնակելի շենքերի Մ. ծ-երի համար լայն տարածում են ստացել երկաթբետոնե սնամեջ սալերը, որոնք հենվում են սենյակի պատերին կամ կարկասով շենքի *պարկունակներին*: Արդ. շենքերի Մ. ծ-ի համար լայնորեն կիրառվում են բարձրամուր պողպատե ամրանով նախալարված երկաթբետոնե կողավոր սալերը:

*Գրկ.* Տեր-Ավագյան Վ. Մ., Արդյունաբերական շենքեր, Ե., 1973: Серк Л. А., Курс архитектуры, М.—Л., 1940.

*Լ. Սեդրակյան*

**ՄԻՋՃՅՈՒՂԱՅԻՆ ՀԱՇՎԵԿՇԻՌ** հասարակական արդյունքի արտադրության ու բաշխման, ընդլայնված վերարտադրության ճյուղային համամասնությունների տնտեսական վերլուծության ու պլանավորման մեթոդ: Կառուցման տեսական հիմքը ընդլայնված վերարտադրության մարքս-լենինյան տեսությունն է: Հիմնական սկզբունքային դրույթները մշակվել են ՍՍՀՄ-ում 1923—1924-ի տնտ. տարվա ժողովրդատնտեսական հաշվեկշիռը կազմելիս: ԱՄՆ-ում էկոնոմիկայի վերլուծության համար Մ. հ. կիրառվել է 1930-ական թթ. և արտասահմանում ստացել «ծախսեր-թողարկում» (input-output) անվանումը: Մ. հ-ները կազմվում են պլանային և հաշվետու ժամանակաշրջանի համար, արժեքային (համախառն արտադրանք), բնաձևային (արտադրանքի կարևոր տեսակներ) և բնաձևաարժեքային արտահայտությամբ: Պլանային Մ. հ-ները կարող են կազմվել դինամիկ մոդելի հիման վրա, որը գծային հավասարումների համակարգ է, ապահովում է արտադրության, կապիտալ ներդրումների ու աշխատանքային ռեսուրսների փոխադարձ կապն ընդլայնված վերարտադրության մեջ: Ստատիկ մոդելում այդ կապերը չեն արտացոլվում: Այն ընդգրկում է միայն աշխատանքի առարկաների և արտադրության կապը: Երկրի ժողտնտեսության բոլոր ճյուղերն ընդգրկող հաշվեկշռից բացի, մշակվում են նաև ռեգիոնալ մոդելներ՝ ըստ առանձին միութենական հանրապետությունների և տնտ. շրջանների:

Միջճյուղային հաշվեկշռի աղյուսակի սկզբունքային սխեման ունի հետևյալ տեսքը:

(Բ) →

(Ա) ↓

| | | Սպառող ճյուղեր / Արտադրող ճյուղեր | Հասարակական ամբողջական արդյունք | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | | Միջանկյալ արդյունք | | | | | | Վերջնական արդյունք | | | | | |
| | | | 1 | 2 | ... | j | ... | n | Հիմնական ֆոնդերի դուրսգրման փոխհատուցում և կապիտալ նորոգում | Ազգային եկամուտ | | Արտահանում (+), ներմուծում (—) | Ընդամենը | Ամբողջը |
| | | | Մետալուրգիա | Էլեկտրաէներգետիկա | . . . . . | | . . . . . | | | Սպառման ֆոնդ | Կուտակման ֆոնդ | | | |
| Հասարակական ամբողջական արդյունքի արժեքը — Ընթացիկ նյութական ծախսեր | 1 | Մետալուրգիա | $a_{11}x_1$ | $a_{12}x_2$ | . . . | $a_{1j}x_j$ | . . . | $a_{1n}x_n$ | | | | | $y_1$ | $x_1$ |
| | 2 | Էլեկտրաէներգետիկա | $a_{21}x_1$ | $a_{22}x_2$ | . . . | $a_{2j}x_j$ | . . . | $a_{2n}x_n$ | | | | | $y_2$ | $x_2$ |
| | ... | . . . . . . . . . . | . . . | . . . | . . . | . . . | . . . | . . . | | | | | . . . | . . . |
| | i | | $a_{i1}x_1$ | $a_{i2}x_2$ | . . . | $a_{ij}x_j$ | . . . | $a_{in}x_n$ | | | | | $y_i$ | $x_i$ |
| | ... | . . . . . . . . . . | . . . | I քառորդակ | | | | . . . | II քառորդակ | | | | . . . | . . . |
| | n | | $a_{n1}x_1$ | $a_{n2}x_2$ | . . . | $a_{nj}x_j$ | . . . | $a_{nn}x_n$ | | | | | $y_n$ | $x_n$ |
| Վերջնական արդյունքի արժեքը | | Ամորտիզացիա | $C\Delta_1$ | $C\Delta_2$ | . . . | $C\Delta_j$ | . . . | $C\Delta_n$ | | | | | | |
| | | Աշխատավորների եկամուտները | $v_1$ | $v_2$ | . . . | $v_j$ | . . . | $v_n$ | | | | | | |
| | | Ձեռնարկությունների զուտ եկամուտը | $m_1$ | III քառորդակ | | | | | IV քառորդակ | | | | | |
| | | Պետության կենտրոնացված զուտ եկամուտը | | $m_2$ | . . . | $m_j$ | . . . | $m_n$ | | | | | | |
| | | Ընդամենը | | | | | | | | | | | | |
| | | Ամբողջը | $x_1$ | $x_2$ | . . . | $x_j$ | . . . | $x_n$ | | | | | | $\Sigma x_i$ |

Այսպիսի սխեմայով կազմված միջճյուղային կապերի աղյուսակի թվերն ըստ սյունակների (Ա գծի ուղղությամբ) արտահայտում են որոշակի ճյուղի նյութական արտադրական ծախսերի ու նոր արժեքի, իսկ ըստ տողերի (Բ գծի ուղղությամբ)՝ արտադրանքի բաշխման (միջանկյալ արտադրանք) և վերջնական սպառման կառուցվածքը: Առաջին քառորդակը բնութագրում է արտադրական սպառումը, երկրորդը՝ վերջնական արդյունքը: Երրորդ քառորդում արտացոլվում է նոր ստեղծված արժեքի կազմը, իսկ չորրորդում՝ ազգային եկամտի մասնակի վերաբաշխումը:

Ճյուղերի միջև քանակական փոխադարձ կապերի մաթ. արտահայտությունը կարելի է տալ հետևյալ տեսքով. $x_{ij}=a_{ij}\cdot x_j$, որտեղ $x_{ij}$-ն i ճյուղի ծախսումների մեծությունն է j ճյուղի արտադրանքի վրա, $_{ij}a$-ն՝ i ճյուղի արտադրանքի քանակը j ճյուղի արտադրանքի միավորի թողարկման համար, իսկ $x_j$-ն j ճյուղի ամբողջ արտադրանքն է: Հավասարման մեջ $a_{ij}=$ $=\frac{x_{ij}}{x_i}$ արտահայտում է ուղղակի ծախսերի գործակիցը, որը բնութագրում է մեկ ճյուղի արտադրանքի ծախսերի համեմատական մեծությունն այլ ճյուղի արտադրանքի միավորի արտադրության վրա: Այդ գործակիցների հիման վրա հակադարձ մատրիցի կամ ուղղակի և անուղղակի ծախսերի գործակիցների մատրիցային շարքի գումարման միջոցով հաշվարկվում են լրիվ ծախսերի գործակիցները, որոնք արտահայտում են փոխադարձորեն կապված բոլոր ճյուղերում միավոր արտադրանքի թողարկման համար կատարված ծախսերի մեծությունը:

Մ. հ-ի մեթոդը կիրառվում է հասարակական արտադրության կառուցվածքի վերլուծման ու պլանավորման, ինչպես նաև գնագոյացման գիտական հիմնավորման, աշխատանքի ռեդուկցիայի ժամանակ ևն: Օգտագործվում է աշխատանքի միջազգային ռացիոնալ բաժանման, արտաքին առևտրի արդյունավետության բարձրացման պրոբլեմների լուծման, երկրի տնտ. զարգացման մակարդակների և արտադրության արդյունավետության միջազ-

«ՄԻՄԻԿՐԻԱ» ներդիրի տակագիրը

Ուտելի միջատներ, որոնք նըման են ոչ ուտելի միջատների. 1. իշամեղվին նման ծաղկաճանճ, 2. ապակեթիթեռ, նմանվում է ձիաստացի (3), 4. սպիտակաթիթեռ, նման է իտոնիդա գիշատիչ թիթեռի (5), 19. եռագույն ծաղկաճանճ, նման է թփուտային իշամեղվի (20), 27. իշամեղվանման ճանճ, նման է գետնաիշամեղվի (28): Միջատներ, որոնք հանգիստ դիրքով նման են ծառի կեղևի կամ ծառային քարաքոսերի. 6. թըռչող թիթեռ՝ կարմիր շքանշանաժապավեն, 7. նույնը հանգիստ վիճակում, 8. քարաքոսաթիթեռ, 9. երկրաչափ թիթեռի թրթուր: Միջատներ, որոնք նման են բույսերի կանաչ ճյուղերի կամ ծաղիկների. 10. կանաչ երկրաչափի թրթուր, 11. սալորենու պոչավոր թիթեռի հարսնյակ, 12. նույնի թրթուր, 13. ծառի կանաչ փայտամլուկ, 14. կանաչ մորեխ, նման է կանաչ տերևի, 17. աղոթարար, նման է խոլորձի ծաղիկի, 18. տերևակերպ ձողամիջատ: Միջատներ, որոնք նման են բույսերի չոր ճյուղերի կամ տերևների. 15. ձողամիջատ, 16. ուռենու երկրաչափի թրթուր, նման է ճյուղի, 21. կալիմ թիթեռը հանգիստ վիճակում, 22. նույնը թռիչքի ժամանակ, 23. ֆալերի ճյուղանման թիթեռ, նման է փտած ծառի բնի, 24. չոր տերևանման քթով թիթեռ. 25. նույնը բացված թևերով, 26. չոր տերևանման սպիտակաթիթեռ

գային համեմատության համար: Այդ մեթոդի հետագա կատարելագործումը թելադրվում է զարգացած սոցիալիզմի փուլում պլանավորման համակարգի առջև դրված կարևոր խնդիրների կենսագործման պահանջով: ՍՍՀՄ-ում Մ. հ-ներ են կազմվել 1959-ի, 1966-ի, 1972-ի և 1977-ի, իսկ ՀՍՍՀ-ում՝ 1963-ի, 1966-ի, 1972-ի և 1977-ի համար: Այժմ խոշորացված ճյուղերի Մ. հ-ներ են կազմվում նաև յուրաքանչյուր տարվա համար:

*Գրկ.* Կոստանդյան Ռ.Հ., Միջճյուղային բալանսը և ընդլայնված վերարտադրության համամասնությունները, Ե., 1972: Эйдельман М. Р., Межотраслевой баланс общественного продукта. (Теория и практика его составления), М., 1966.

*Շ. Մարգարյան*

**ՄԻՋՃՅՈՒՂԱՅԻՆ ՄՐՑԱԿՑՈՒԹՅՈՒՆ**, տես *Մրցակցություն*:

**ՄԻՋՃՅՈՒՂԱՅԻՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՊԵՐ**, հասարակական ամբողջական արդյունքի արտադրության ու իրացման ընթացքում նյութական արտադրության ճյուղերի միջև առաջացող փոխկապակցություններ: Դրսևորվում են նյութական արժեքների միջճյուղային հոսքերում և արտացոլում վերարտադրության պրոցեսի բոլոր փուլերը: Արտադրության ճյուղերի քանակական հարաբերակցությունների ու համամասնությունների որոշման միջոց են: Կապիտալիզմի ժամանակ, արտադրության անարխիայի ու մրցակցության օրենքի գործողության պայմաններում, արտադրության ճյուղերի հարաբերակցությունները ձևավորվում են տնտեսության մեջ մշտապես խախտված համամասնությունները ժամանակավորապես վերականգնելու միջոցով: Կոմունիստական (սոցիալիստական) հասարակարգում դրանք սահմանվում են պլանաչափ համամասն զարգացման տնտ. օրենքի և տնտ. մյուս օրենքների պահանջներին համապատասխան: Արտադրության համամասնությունների ու Մ. տ. կ-ի կատարելագործման միջոցով ստեղծվում է արտադրության առաջադիմական կառուցվածք և բարձրացվում հասարակական արտադրության արդյունավետությունը:

Նյութական արտադրության մեջ առանձնացվում են աշխատանքի առարկաների ընթացիկ արտադրության և արտադրական ծառայությունների, արտադրության ընդլայնման և շարքից դուրս եկած հիմնական ֆոնդերի փոխհատուցման կապերը: Տարբերվում են նաև միջանկյալ արտադրանքի (որն ընթացիկ արտադրության մեջ հետագա վերամշակման է ենթարկվում) և հասարակության վերջնական սպառմանը (անձնական և հասարակական սպառում, կուտակում, շարքից դուրս եկած հիմնական ֆոնդերի փոխհատուցում, արտահանում) գնացող արտադրանքի կապերը:

Մ. տ. կ-ի վերլուծության և պլանավորման կատարելագործման միջոց է հասարակական արդյունքի արտադրության ու բաշխման *միջճյուղային հաշվեկշիռը*: Նյութական արտադրության յուրաքանչյուր ճյուղ կապված է նյութական ռեսուրսների մատակարարների և պատրաստի արտադրանքի սպառողների հետ: Միջճյուղային հաշվեկշռում տրվում են միջճյուղային քանակական կապերը բնութագրող արտադրանքի թողարկման ու բաշխման գործակիցները: Առաջինները բնութագրում են ծախսերի, երկրորդները՝ ըստ առանձին սպառողների թողարկվող արտադրանքի բաշխման կառուցվածքը: Նյութական ծախսերի գործակիցներով որոշում են տարբեր ճյուղերի արտադրանքի պահանջի չափը տվյալ ճյուղի ընթացիկ արտադրության կարիքների համար: Արտադրանքի թողարկման գործակիցների միջոցով վերլուծվում են յուրաքանչյուր ճյուղի կոնկրետ արտադրանքի արտադրության ծավալի պահանջարկի տարրերը և մասերը: Արտադրության ճյուղերի տնտ. կապերը տարբերվում են միմյանցից. օրինակ, թեթև ու սննդի արդյունաբերության արտադրանքի հիմնական մասն օգտագործվում է ժող. սպառման, իսկ մեքենաշինության ու շինարարության՝ կուտակման համար: Արտադրանքի բնույթից կախված, ճյուղերի մի մասի տնտ. կապերը խիստ սահմանափակ են, իսկ մյուսների (օրինակ, էլեկտրաէներգետիկայի) արտադրանքն օգտագործվում է արտադրության բոլոր ճյուղերում կամ դրանց մեծ մասում: Ժողտնտեսության զարգացման տեմպերի ու համամասնությունների վրա վճռորոշ ազդեցություն ունեն Մ. տ. կ-ի 10—15%-ը:

Ճյուղերի ուղղակի կապերից բացի, ժողտնտեսության մեջ կան նաև անուղղակի կապեր, որոնք միջնորդավորվում են մի շարք ճյուղերի արտադրանքի թողարկմամբ:

Արտադրության ճյուղերի կապերի ու հարաբերակցությունների փոփոխությունը կատարվում է գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա:

*Գրկ.* Մարգարյան Շ.Ս., Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության միջճյուղային կապերը, Ե., 1970: Межотраслевые связи в народном хозяйстве СССР, под ред. Ф. Н. Клоцвога и Р. А. Бузулова, М., 1968.

*Շ. Մարգարյան*

**ՄԻՋՄԱՅՐՑԱՄԱՔԱՅԻՆ ՀՐԹԻՌ**, «երկիր-երկիր» դասին պատկանող, մարտական, կառավարվող *բալիստիկ հրթիռ*: Թռիչքի հեռավորությունն ավելի քան 10 հզ. *կմ* է: Մ. հ-ները նախատեսված են մեծ հեռավորությունների վրա կամ հեռավոր մայր ցամաքներում գտնվող օբյեկտներ ոչնչացնելու համար: Մ. հ-ները բազմաստիճան են: Մեկնարկային զանգվածը 100—150 *տ* է, օգտակար բեռը՝ մինչև 3,2 *տ*: ԱՄՆ-ում Մ. հ-ները օգտագործվել են որպես տանող հրթիռներ՝ տիեզերական օբյեկտները ուղեծիր դուրս բերելու համար: Օրինակ, ամերիկյան «Ատլաս» և «Տիտան» Մ. հ-ների օգնությամբ իրականացվել է «Մերկուրի» և «Ջեմինի» տիեզերանավերի արձակումը:

**ՄԻՋՄՈԼԵԿՈՒԼԱՅԻՆ ՓՈԽԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆ**, էլեկտրականապես չեզոք մոլեկուլների կամ ատոմների փոխազդեցություն: Մ. փ-յամբ է որոշվում հեղուկների և մոլեկուլային բյուրեղների գոյությունը և իրական ու իդեալական գազերի տարբերությունը: Մ. փ. առաջինը հաշվի է առել *Վան-դեր-Վալսը* (1873) իրական գազերի և հեղուկների հատկությունները բացատրելու համար: Վան-դեր-Վալսի պատկերացումների համաձայն՝ փոքր հեռավորությունների վրա գործում են վանողական ուժեր, որոնք վերածվում են ձգողականի, երբ հեռավորությունը մոլեկուլների միջև մեծանում է: Մ. փ. մոլեկուլային ուժերի, այսինքն՝ վանողական և տարբեր բնույթի (դիրքորոշման, ինդուկցիոն և դիսպերսիոն) էլեկտրական ձգողական ուժերի արդյունք է: Դիրքորոշման ուժերը գործում են բևեռային մոլեկուլների միջև, ինդուկցիոն կամ բևեռացման ուժերը՝ բևեռային և ոչ բևեռային մոլեկուլների միջև, իսկ դիսպերսիոն ուժերը՝ ոչ բևեռային մոլեկուլների միջև: Այդ փոխազդեցության բնույթի բացատրությունը հնարավոր եղավ միայն քվանտային մեխանիկայի ստեղծումից հետո: Մ. փ. կախված է մոլեկուլների միջև եղած $r$ հեռավորությունից, փոխադարձ դիրքից և նկարագրվում է փոխազդեցության $U(\vec{r})$ պոտենցիալ էներգիայով: Այդ էներգիան մեծ հեռավորությունների վրա համեմատական է $r^{-6}$-ին: Վանողական ուժերը գործում են շատ փոքր հեռավորությունների վրա, երբ ատոմների լրացված էլեկտրոնային թաղանթները ծածկում են միմյանց: Վանողական ուժերի պոտենցիալ էներգիան համեմատական է $r^{-12}$-ին, այսինքն՝ շատ արագ աճում է, երբ հեռավորությունը ատոմների միջև փոքրանում է: Մ. փ. նկարագրվում է տարբեր փորձնական բանաձևերով, մասնավորապես, այսպես կոչված, Լենարդ-Ջոնսի պոտենցիալով՝

$$U(r)=4\varepsilon\left[\left(\frac{\sigma}{r}\right)^{12}-\left(\frac{\sigma}{r}\right)^{6}\right]:$$

Բանաձևի մեջ մտնող $\sigma$ և $\varepsilon$ պարամետրերը որոշվում են փորձնական ճանապարհով:

*Է. Չուբարյան*

**ՄԻՋՆԱԲԵՐԴ**, պատմական բնակավայրի (ամրոց, քաղաք) առավել անառիկ՝ բարձրադիր և պարսպապատ մասը: Մ. բնակավայրի կենտրոնական և ամենազորեղ պաշտպանական հենարանն էր, որտեղ գտնվում էին թագավորի կամ տեղական վարչապետի ու ավագանու պալատական, բնակելի կառույցները, պաշտամունքային, վարչական ու տնտ. շինություններ, զորանոցներ: Ամրոցի կամ քաղաքի բնակելի թաղամասերի գրավման դեպքում բնակչությունը պատսպարվում էր Մ-ում, որտեղ նախապես ամբարված էր լինում սննդամթերք, խմելու ջուր, զինամթերք: Մ. երբեմն ունենում էր նաև ստորգետնյա գաղտնուղի՝ արտաքին աշխարհի հետ կապի, թշնամուն թիկունքից հարվածելու և, անհրաժեշտության դեպքում, փախուստի համար: Ասուրական Դուր Շարուկին քաղաքի Մ. (10 *հա* տարածքով) կառուցված էր 14 *մ* բարձրությամբ արհեստական հարթակի վրա: Հին Հունաստանում Մ. կոչվել է *ակրոպոլիս*, Հին Հռոմում՝ *կապիտոլիում*: Նշանավոր են եղել Աթենքի Ակրոպոլիսը և Հռոմի Կապիտոլիումը: Մ-եր ունեցել են նաև արևմտաեվրոպական, ռուս. և միջինասիական միջնադարյան քաղաքները, որտեղ դրանք համապատասխանաբար կոչվել են սիթի, *կրեմլ*, արկ:

Հայաստանի բրոնզեդարյան և ուրարտ. առավել մեծ բնակավայրերը ունեցել են մեկից ավելի Մ-եր, որոնցով ամրացվում էին քաղաքի տարածքում գտնվող բարձունքները (Հոռոմ, Արգիշտիխինիլի): Եզակի, բարդ պաշտպանական համակարգ էր Արտաշատի Մ., որն ընդգրկում էր միմյանց հետ պաշտպանական պարիսպներով հաղորդակցվող մի քանի բլուր: Միջնադարյան Հայաստանում առավել նշանավոր են եղել Վանի, Անիի, Դվինի և Կարսի Մ-երը:

*Գրկ.* Ղ ա ֆ ա դ ա ր յ ա ն Կ. Գ., Դվին քաղաքը և նրա պեղումները, Ե., 1952: Ա ռ ա ք ե լ յ ա ն Բ. Ն., Հին Արտաշատ, Ե., 1975: О р б е л и И. А., Краткий путеводитель по городищу Ани, СПБ, 1910; М а р т и р о с я н А. А., Аргиштихинили, Е., 1974.

*Բ. Առաքելյան*

**ՄԻՋՆԱԳԱՆԳՈՒԹՅՈՒՆ**, մարդաբանության մեջ գանգի երկարության ու լայնության այնպիսի հարաբերությունը, որի դեպքում լայնությունը կազմում է երկարության 0,75—0,80 մասը:

**ՄԻՋՆԱԳԻԾ**, *եռանկյան* գագաթը հանդիպակաց կողմի միջնակետի հետ միացնող հատվածը: Եռանկյան երեք Մ-երը հատվում են մի կետում, որն անվանում են (երբեմն) եռանկյան ծանրության կենտրոն, քանի որ այդ կետը համասեռ եռանկյուն սալի կամ եռանկյան գագաթներում նույն զանգվածներն ունեցող համակարգի *ծանրության կենտրոնն* է: Եռանկյան Մ-երի հատման կետը յուրաքանչյուր Մ. բաժանում է 2:1 հարաբերությամբ՝ հաշված գագաթից:

**ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ ԹԱՏՐՈՆ**, թատերական առանձնահատուկ համակարգ՝ բազմաժանր և տարակառույց, կրկեսի, դրամայի, պարերգի և ժողովրդական խաղային բանահյուսության տարասեռ (հետերոգեն) ձևերի համատեղությամբ: Ձևավորվել ու զարգացել է IV—XV դդ. Առաջավոր Ասիայում (Բյուզանդիա, Կապադովկիա, Ասորիք, Հայաստան), Արևելքում (Պարսկաստան, Հնդկաստան, Չինաստան, Ճապոնիա) և Արևմտյան Եվրոպայում (Իտալիա, Ֆրանսիա, Գերմանիա, Անգլիա)՝ որպես թատերարվեստի ընդհանրական տիպ: Մ. թ. Առաջավոր Ասիայում հայտնի է եղել որպես բանավոր-իմպրովիզացիոն արվեստ (IV—X դդ.), որի ավանդները մասամբ ժառանգել է իտալ. կոմեդիա դելլ' արտեն: X դարից Ֆրանսիայում գրվել են ժող. կատակերգություններ՝ ֆարսեր: V դարից Արևելքում, հատկապես Հնդկաստանում, զարգացել է դրամատուրգիական թատրոնը իր տեսությամբ («Նաթյաշաստրա»): XII—XV դդ. Արևմտյան Եվրոպայում զարգացել է լիթուրգիական (պատարագային) դրաման, ապա՝ եկեղեցական թատրոնը իր գրական հիմքով (միստերիա, մորալիտե, միրաքլ): Վերջինս որոշակիորեն ազդել է Վերածնության դարաշրջանի թատրոնի կազմավորման վրա: Մ. թ-ի որոշ արտահայտչաձևեր կիրառվել են նորագույն թատրոնում (Վ. Մեյերխոլդ, Ե. Վախթանգով, Բ. Բրեխտ):

*Հ. Հովհաննիսյան*

**ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ ԼԱԴԵՐ**, ժողովրդական երաժշտությունից առնված յոթաստիճանանոց բնական մոնոդիական *լադերի* համակարգը, որոնք վաղ միջնադարից մինչև XVI դարը լատինական աշխարհի մասնագիտացված (նախ՝ միաձայն, ապա և բազմաձայն) երաժշտության հիմքն են կազմել (կոչվում են նաև ե կ ե ղ ե ց ա կ ա ն լ ա դ ե ր): Համակարգը կրել է բյուզանդական ութձայնի որոշակի ազդեցությունը, պատմականորեն զարգացել (X դ. լադերի թվային անվանումները փոխարինվել են հին հուն. տեսությունից առնված հատուկ անուններով) և Վերածննդի դարաշրջանում հասել է իր ավարտուն վիճակին: Տարբերում են հիմնական (արևմտաեվրոպական երաժշտության տեսության մեջ՝ «ավտենտիկ») և ածանցյալ («պլագալ») լադեր: 1547-ին շվեյցարացի երաժիշտ-տեսաբան Հ. Գլարեանը համակարգի լադերի քանակը 8-ից հասցրել է 12-ի (ավելացրել է էոլական ու հոնիական լադերն իրենց ածանցյալներով):

Ավտենտիկ (հիմնական) լադեր
Պլագալ (ածանցյալ) լադեր
Հոնիական
Հիպոհոնիական
Դորիական
Հիպոդորիական
Փռյուգիական
Հիպոփռյուգիական
Լիդիական
Հիպոլիդիական
Միքսոլիդիական
Հիպոմիքսոլիդիական
Էոլական
Հիպոէոլական

-finalis (հայկ. տեսության մեջ՝ «վերջավորող հնչյուն»)
- repercussa (կրկնվող տոն, «դիմող հնչյուն»)

1571-ին իտալացի Ջ. Ցառլինոն հաջորդականությունը սկսելով հոնիականից, լադային տոնիկաները դասավորել է դիատոնիկ շարքի դո-ից մինչև լյա ծավալում, պարզաբանել լադերի արտահայտչական հատկանիշները, որ լայնորեն դրսևորված են «խիստ ոճի» պոլիֆոնիայում:

XVII դարից հոնիական և էոլական լադերը իրենց արտահայտչական առավելագույն հնարավորությունների շնորհիվ առանձնացվել, կատարելագործվել են և դարձել դասական մաժոր-մինոր հարմոնիկ համակարգի հիմնական լադերը: Դրանից հետո Մ. լ. իրենց նշանակությունը պահպանել, բայց գործածվել են սոսկ «դիպվածաբար» (Բախ, Հենդել, Բեթհովեն, Շոպեն, Բրամս): XX դ. 1-ին կեսին երաժշտության լադային հիմքի նոր զարգացման ձգտումներով տոգորված կոմպոզիտորները հաճախ դիմել են հենց Մ. լ-ին, քանի որ դրանք մինչև այժմ էլ տարածված են շատ ժողովուրդների ժող. երաժշտության մեջ:

*Ռ. Աթայան*

**ՄԻՋՆԱԿԱՐԳ ԿՐԹՈՒԹՅՈՒՆ**, կրթության հիմնական աստիճանի ավանդական անվանումը երկրների մեծ մասի լուսավորության համակարգում: Որպես տարրական և բարձրագույն կրթության միջանկյալ աստիճան առավել պարզորոշ ձևավորվել է միջին դարերի վերջում՝ կապված արտադրության, գիտության, մշակույթի առաջընթացի հետ: XV—XVI դդ. կոչվել է դասական կրթություն (ուս. հաստատությունը՝ *գիմնազիա*): XVIII դ. դասականի հետ միասին տարածում գտավ ռեալական կրթությունը (ռեալական ուսումնարաններ): Մինչհեղափոխական Ռուսաստանում ընդհանուր Մ. կ. էին տալիս գիմնազիաները, ռեալական և առևտրական ուսումնարանները: Գոյություն ունի ընդհանուր և մասնագիտական Մ. կ.: Ընդհանուր Մ. կ-յան նպատակն է սովորողներին զինել գիտությունների հիմունքների համակարգված գիտելիքներով, որոնք անհրաժեշտ են ժողտնտեսության, մշակույթի, կենցաղի տարբեր բնագավառներում աշխատելու և մասնագիտական կրթություն ստանալու համար: Ընդհանուր Մ. կ. իրականացվում է միջնակարգ հանրակրթական դպրոցում, ՍՍՀՄ-ում և սոցիալիստական մի շարք երկրներում՝ նաև պրոֆտեխնիկական և միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություններում (տես *Միջնակարգ մասնագիտական կրթություն*): Մասնագիտական Մ. կ. ստեղծվում է ընդհանուր Մ. կ-յան և որոշակի մասնագիտության բնագավառների տեսական ու գործնական գիտելիքների, մասնագիտական ունակությունների և հմտությունների ամբողջությունից:

Առանձին երկրների Մ. կ-յան վիճակի և կառուցվածքի մասին տես համապատասխան հոդվածների Ժ ո ղ ո վ ր դ ա կ ա ն կ ր թ ո ւ թ յ ո ւ ն, Լ ո ւ ս ա վ ո ր ո ւ թ յ ո ւ ն բաժիններում:

**ՄԻՋՆԱԿԱՐԳ ՄԱՍՆԱԳԻՏԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅՈՒՆ**, մասնագիտական կրթության ձևերից մեկը: Նպատակն է կադրեր պատրաստել արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և կապի, գյուղատնտեսության, մշակույթի տարբեր ճյուղերի, առողջապահության համար, միաժամանակ իրականացնել այդ կադրերի որակավորման բարձրացումը: Մ. մ. կ., որպես մասնագիտական և ընդհանուր կրթության ինքնուրույն աստիճան, ձևավորվել է XX դ. 1-ին կեսին, չնայած առանձին միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություններ երևան են եկել XVIII դ. (Եվրոպայում և Ռուսաստանում): ՍՍՀՄ-ում Մ. մ. կ. ժողկրթության օրգանական մասն է, համընդհանուր միջնակարգ կրթության իրականացման հիմնական ձևերից մեկը, իրականացվում է ավելի քան 450 տարբեր մասնագիտություններով, որոնք միավորվում են ճյուղային խմբերի մեջ (երկրաբանական, լեռնային, էներգետիկայի, մետալուրգիական, մեքենաշինական, սարքաշինական, էլեկտրատեխնիկական, ռադիոտեխնիկական, քիմ., շինարարական, տեքստիլ, սննդի, ինդուստրիալ, երկրագործական, ֆոտոկինոտեխնիկայի, տրանսպորտի, գյուղատնտ., բժշկ., մանկավարժական, երաժշտ., թատերական, գեղարվեստական ևն): Առան-

ձին ճյուղ է ռազմ. կրթությունը: Մ. մ. կ-յան համակարգում ուս. հաստատությունների հիմնական տեսակներն են տեխնիկումները (արդ., շինարարական, տրանսպորտի և կապի, գյուղատնտ., տնտեսագիտական, կոոպերատիվ ևն) և ուսումնարանները (բժշկ., ծովագնացության, մանկավարժական, երաժշտ., գեղարվեստական, պարարվեստի, թատերական ևն), մի քանիսն էլ (միլիցիայի, կուլտուրլուսավորական ևն) ավանդաբար կոչվում են դպրոցներ: Ուս. առարկաների կոմպլեքսն ու ծավալը, յուրաքանչյուր մասնագիտության ուս. ժամկետը որոշվում են Մ. մ. կ-յան ողջ համակարգի համար ՍՍՀՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության հաստատած ուս. պլանով: Կիրառվում են ընդունելության միասնական կանոններ: Ընդունվելու իրավունքը երաշխավորված է 8-ամյա միջնակարգ դպրոցն ավարտած ՍՍՀՄ բոլոր քաղաքացիներին: Ցերեկային բաժիններ ընդունվում են մինչև 30 տարեկանները, երեկոյան և հեռակա բաժիններ՝ առանց տարիքի սահմանափակման: Միջնակարգ պրոֆտեխնիկական ուսումնարաններ ավարտածների համար գոյություն ունեն խմբեր՝ ուսուցման կրճատված ժամկետով: Ընդունվողները, որպես կանոն, հանձնում են 2—3 մրցութային քննություն: Ցերեկային ուսուցումը 8-ամյա դպրոցն ավարտածների համար 3—4 տարի է, միջնակարգն ավարտածների համար՝ 2—3: Ավարտողները հանձնում են պետ. քննություններ կամ պաշտպանում դիպլոմային աշխատանք (նախագիծ) ու ստանում միասնական նմուշի դիպլոմներ: Ուսուցման հիմնական կազմակերպչական ձևերն են՝ դասը, դասախոսությունը, լաբորատոր պարապմունքները, ուս., արտադրական պրակտիկաները, կուրսային և դիպլոմային նախագծերը: ՍՍՀՄ-ում հրատարակվում է «Սրեդնեե սպեցիալնոյե օբրազովանիե» («Среднее специальное образование», 1954) ամսագիրը: Սովետական իշխանության տարիներին միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություններ են հիմնվել բոլոր միութենական հանրապետություններում: 1930-ին դրանցում բացվել են երեկոյան և հեռակա բաժիններ, 1950-ական թթ. ստեղծվել են երեկոյան և հեռակա մասնագիտացված տեխնիկումներ: 1978—79 ուս. տարում ՍՍՀՄ-ում գործում էր 4332 միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություն (4 671 հզ. սովորող): Սովետական իշխանության տարիներին Մ. մ. կ-յան համակարգում պատրաստվել է ավելի քան 20 մլն մասնագետ:

Սոցիալիստական մյուս երկրներում նույնպես գոյություն ունեն Մ. մ. կ-յան պետ. համակարգեր, որոնք համապատասխանում են այդ երկրների ազգային առանձնահատկություններին և ժողտնտեսության պահանջներին: Մ. մ. կ. կազմակերպվում է նաև Ասիայի և Աֆրիկայի զարգացող երկրներում: Մ. մ. կ-յան համակարգը բազմատեսակ է կապիտալիստական երկրներում:

ՀՍՍՀ-ում 1921—22 ուս. տարում գործում էր 3 միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություն (268 սովորող), 1978—79 ուս. տարում՝ 65(55 հզ. սովորող, այդ թվում՝ 42,2 հզ. ցերեկային, 5,1 հզ. երեկոյան, 7,7 հզ. հեռակա բաժիններում), Մ. մ. կ-յամբ կադրեր են պատրաստվում 158 մասնագիտությամբ: 1929—76-ը պատրաստվել է 193,5 հզ. մասնագետ:

*Ռ. Դալլաքյան*

**ՄԻՋՆԱՐԺԵՔ**, 1. հավանականությունների տեսության մեջ, *պատահական մեծության* արժեքների բաշխման բնութագրիչներից մեկը. եթե X պատահական մեծության բաշխման F(x) ֆունկցիան անընդհատ է, ապա նրա m Մ. սահմանվում է որպես $F(x)=\frac{1}{2}$ հավասարման արմատ $\left(F(m)=\frac{1}{2}\right)$: X պատահական մեծությունն ընդունում է ինչպես m-ից մեծ, այնպես էլ m-ից փոքր արժեքներ՝ $\frac{1}{2}$ հավանականությամբ: *Մաթեմատիկական վիճակագրությունում* $X_1, X_2, \ldots, X_n$ արժեքներից կազմված վարիացիոն շարքի Մ. անվանում են $X_k$ թիվը, եթե $n=2k+1$ կամ $\frac{X_k+X_{k+1}}{2}$ թիվը, եթե $n=2k$:

**ՄԻՋՆՈՐԴ ԴԱՏԱՐԱՆ**, դատարան, որն ստեղծում են կողմերը՝ միմյանց միջև ծագած վեճը լուծելու համար (ՀՍՍՀ քաղաքացիական օրենսգիրք, հոդված 6): Լինում են ժամանակավոր, որոնք կարող են սեփական նախաձեռնությամբ ստեղծել քաղաքացիները կամ սոցիալիստական կազմակերպությունները, և մշտական (ՍՍՀՄ առևտրա-արդյունաբերական պալատին առընթեր Արտաքին առևտրական իրավարարական հանձնաժողով, *Ծովային իրավարարական հանձնաժողով*): Քաղաքացիները ընտրում են մեկ կամ մի քանի միջնորդ դատավոր՝ նրանց վերապահելով քաղաքացիական վեճի լուծումը: Մ. դ-ի որոշումը ենթակա է հարկադիր կատարման, եթե չի հակասում գործող օրենսդրությանը (տես Մ. դ-ի կանոնադրությունը՝ ՀՍՍՀ քաղաքացիական դատավարության օրենսգիրք, հավելված № 3): Կազմակերպությունները Մ. դ. ստեղծում են այլ սոցիալիստական կազմակերպությունների գործիմաց ներկայացուցիչներից՝ տնտ. վեճեր լուծելու համար: Մշտապես գործող Մ. դ-ները լուծում են առևտրական ծովագնացության և արտաքին առևտրի բնագավառներում սովետական կազմակերպությունների և օտարերկրյա ֆիրմաների գործունեությունից ծագող վեճեր: Կազմակերպվում են հասարակական հիմունքներով և արմատապես տարբերվում են ՍՍՀՄ-ում արդարադատություն իրականացնող պետ. մարմիններից:

*Ս. Հովհաննիսյան*

**ՄԻՋՆՈՐԴ ԴԱՏԱՐԱՆԻ ՄՇՏԱԿԱՆ ՊԱԼԱՏ**, միջազգային իրավարարական մարմին. ստեղծվել է Խաղաղության առաջին կոնֆերանսում (Հաագա, 1899), դիվանագիտական ճանապարհով չհարթված միջազգային վեճի դեպքում միջնորդ դատարանին դիմելու հնարավորությունը դյուրացնելու համար: Պալատի մշտական մարմինը նրա միջազգային բյուրոն է, որի գործունեությունը վերահսկում է պայմանադիր պետությունների դիվանագիտական ներկայացուցիչների մշտական խորհուրդը՝ Նիդերլանդների արտաքին գործերի մինիստրի նախագահությամբ: Մ. դ. մ. պ. կազմվում է միջազգային իրավունքի ճանաչված մասնագետներից (յուրաքանչյուր պետությունից՝ 4 հոգուց ոչ ավելի), որոնց նշանակում են միջազգային վեճերը կարգավորելու մասին կոնվենցիայի մասնակից պետությունները՝ 6 տարի ժամկետով: Յուրաքանչյուր պետության մասնագետներ մշտական պալատում կազմում են ազգային խումբ: Միևնույն անձին կարող է նշանակել մի քանի կառավարություն: ՍՍՀՄ-ը մշտական պալատի մասին կոնվենցիայի մասնակից է, 1956-ից սովետական իրավաբաններին նշանակում է պալատի անդամ: Պալատի կազմի մեջ մտնում են նաև 4-ական իրավաբաններ (ազգային խմբեր) ՈւՍՍՀ-ից և ԲՍՍՀ-ից: Պալատի աջակցությամբ, իրավարարական կարգով, քննարկվում են գլխավորապես իրավաբանական բնույթի վեճեր:

*Ա. Եսայան*

**ՄԻՋՆՈՐԴՈՒԹՅՈՒՆ** միջազգային իրավունքում, միջպետական վեճերի խաղաղ կարգավորումը բանակցությունների միջոցով՝ երրորդ պետության (միջնորդի) մասնակցությամբ: Մ. ստանձնած պետությունը հանդես է գալիս կոնկրետ առաջարկություններով, մասնակցում է կոնֆլիկտի մեջ գտնվող երկրների միջև տեղի ունեցող բանակցություններին (բացառապես վիճող կողմերի հոժարակամ համաձայնությամբ): Ըստ որում միջնորդի առաջարկած պայմանները չեն պարտավորեցնում վեճի մասնակիցներին: Մ-յան ընթացակարգը սահմանվել է Հաագայի 1899-ի և 1907-ի կոնվենցիաներում, ՄԱԿ-ի կանոնադրությունում: ՍՍՀՄ պրակտիկայում հայտնի են դեպքեր, երբ սովետական կառավարությունը հանդես է եկել Մ-յան առաջարկությամբ կամ ընդունել է երրորդ պետության Մ.: Այսպես, 1920-ին Սովետական Ռուսաստանն առաջարկեց իր Մ. թուրք-հայկական ռազմ. կոնֆլիկտը խաղաղ կարգավորելու համար: Տես նաև *Միջազգային իրավարարություն*:

*Ա. Եսայան*

**ՄԻՋՆՈՐՄ** շենքերի և կառույցների, կոնստրուկտիվ տարր, որը միմյանցից բաժանում է շենքերի (կառույցների) կից սենյակները: Մ. սովորաբար ներքին *պատող կոնստրուկցիայի* դեր է կատարում, երբեմն ծառայում նաև որպես միջհարկային ծածկի հենարան (կրող Մ.): Տարբերվում են ստացիոնար, հավաքովի-քանդովի և շարժական (ձևափոխվող) Մ-եր: Բնակելի շենքերի Մ-երը լինում են միջբնակարանային, միջսենյակային և սանիտարական հանգույցների ու խոհանոցի: Ըստ նշանակման և շահագործման պայմանների Մ-երը պետք է բավարարեն ամրության, հրակայունության, խոնավակայունության, ձայնամեկուսիչ և այլ պահանջներ: Ժամանակակից շինարարությունում Մ-երի պատրաստման համար, հիմնականում, օգտագործում են սալեր (օրինակ, գիպսաբետոնային, թեթև բետոններից պատրաստված, փայտատաշեղային), սնամեջ կերամիկական և թեթևբետոնային քարեր, ապակե բլոկներ, հազ

վաղեպ՝ աղյուս և երկաթբետոն: Բնակելի և հասարակական շենքերի շինարարությունում առավել նպատակահարմար է օգտագործել գործարանային պատրաստման խոշոր տարրերից կառուցված հավաքովի Մ-եր: Բարձր խոնավությամբ սենյակներում կիրառվում են բետոնային սնամեջ սալերից և քարերից կառուցված Մ-եր:

**ՄԻՋՇՐՋԱՆԱՅԻՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՊԵՐ**, արտադրության և սպառման շրջանների միջև նյութական բարիքների, աշխատանքային, գիտատեխնիկական և ֆինանսական ռեսուրսների պլանային փոխանակության պրոցես: Հիմքը աշխատանքի տերիտորիալ բաժանումն է, որի միջոցով արտադրության տվյալ ճյուղը ամրացվում է որոշակի շրջանների: Աշխատանքի տերիտորիալ բաժանման համակարգում տվյալ շրջանը հանդես է գալիս ապրանքի և՛ մատակարարող, և՛ սպառող, սակայն առավել նպատակահարմար է յուրաքանչյուր շրջան օպտիմալ սահմաններում մասնագիտացնել որոշակի ապրանքի արտադրության մեջ, որի շնորհիվ, որպես կանոն, արտադրության հասարակական ծախքերը կրճատվում են: Մ. տ. կ-ի վրա ազդում են բնական, պատմական, սոցիալ-տնտեսական և քաղ. գործոններ, որոնց դերը յուրաքանչյուր շրջանում տարբեր ձևերով է դրսևորվում: Առանձին շրջանների մասնակցության դերն ու աստիճանը չափվում է մյուս շրջանների համար դրանց արտադրած ապրանքների տեսակարար կշռով (տես նաև *Տնտեսական շրջանացում*): Մ. տ. կ-ի զարգացման անհրաժեշտ պայմաններն են տրանսպորտն ու կապը, որոնց միջոցով իրականացվում է փոխանակությունը և այդ պրոցեսի օպերատիվ ղեկավարումը: Ըստ շրջանների մասնագիտացված արտադրության ծավալները պլանավորվում են հաշվեկշռային մեթոդով. տարբեր արտադրատեսակների արտադրության և սպառման նյութական հաշվեկշիռների միջոցով որոշվում է հասարակական պահանջմունքը, բացահայտվում արտադրանքի ավելցուկն ու պակասը, ընտրվում արտադրության առավել արդյունավետ եղանակն ու իրացման ռացիոնալ զոտին:

Սոցիալիստական հասարակարգում Մ. տ. կ. ունեն պլանային բնույթ, որը հնարավորություն է տալիս ռացիոնալ օգտագործել աշխատանքի տերիտորիալ բաժանման առավելությունները, նախադրյալներ ստեղծել շրջանի համալիր զարգացման, Մ. տ. կ-ի և արտադրանքի ներշրջանային հոսքերի օպտիմալ զուգակցման համար: Մ. տ. կ-ի զարգացումն ու խորացումը, վերջին հաշվով, օբյեկտիվ նախադրյալներ են ստեղծում հասարակական աշխատանքի արտադրողականության և արտադրության արդյունավետության բարձրացման համար:

Կապիտալիստական երկրներում Մ. տ. կ. ձևավորվում են շուկայի տարերային պահանջների, իրացման նոր շրջաններ զավթելու համար մոնոպոլիաների մրցապայքարի հիման վրա:

ՀՍՍՀ-ն աշխատանքի համամիութենական բաժանման մեջ մասնագիտացել է գունավոր մետալուրգիայի, մեքենաշինության ու մետաղամշակման (հատկապես՝ էլեկտրատեխնիկական արդյունաբերության, հաստոցաշինության, սարքաշինության են), քիմ. արդյունաբերության առավել բարդ ու աշխատատար և բազմաթիվ այլ արտադրատեսակների թողարկման և արտահանման ուղղությամբ, որը պայմանավորված է բնական ռեսուրսների և որակյալ կադրերի առկայությամբ, աշխատանքային ռեսուրսների թվով են: Ներմուծում է նավթ, գազ, փայտանյութ, ածուխ, մեքենաներ, հացահատիկ են: Տնտ. կապերի մեջ է ՍՍՀՄ բոլոր հանրապետությունների, առավել սերտ՝ ՌՍՖՍՀ-ի, Ուկրաինայի, Վրաստանի, Ադրբեջանի, Ղազախստանի հետ: Այդ կապերն անընդհատ կատարելագործվում, խորանում և ամրապնդվում են:

**ՄԻՋԽՈՐՀՐԴԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆ**, ոչ-կառավարական միջազգային կազմակերպություն, որի մեջ միավորվում են նրա նպատակներին համամիտ և աշխատանքներին մասնակցելու պատրաստակամ ազգային պառլամենտական խմբեր: Հիմնադրվել է 1889-ին, Փարիզում: Նպատակն է պրոպագանդել իրավարարության գաղափարները՝ միջազգային վեճեր լուծելիս: Կոչված է խրախուսել կապը բոլոր պառլամենտների անդամների միջև, միավորել նրանց համատեղ գործունեությունը՝ ներկայացուցչական ինստ-ների ամրապնդումը, միջազգային խաղաղությունն ու համագործակցությունն ապահովելու զործում: Մ. մ-յան որոշումները պարտադիր կատարման ուժ չունեն, սակայն որքանով արտահայտում են աշխարհի երկրների մեծ մասի օրենսդրական մարմինների ներկայացուցիչների ընդհանուր կարծիքը, զգալի ազդեցություն ունեն միջազգային այլ կազմակերպությունների, կառավարությունների ու հասարակայնության վրա: Մ. մ-յան բարձրագույն մարմինը ամենամյա կոնֆերանսն է: Նրանց միջև ընկած ժամանակահատվածում աշխատանքները ղեկավարում է միության խորհուրդը, որի կազմի մեջ մտնում են ազգային պառլամենտական խմբերից երկուական ներկայացուցիչ: Մ. մ-յան վարչական մարմինը գործադիր կոմիտեն է, որն ընտրում է միջպառլամենտական բյուրո, միջպառլամենտական մշտական քարտուղարություն՝ գլխ. քարտուղարի ղեկավարությամբ: Մ. մ. ունի մշտական հետազոտական հանձնաժողովներ, որոնք նախապատրաստում են կոնֆերանսների բանաձևերը: Միության շրջանակներում գործում են պառլամենտների գլխավոր քարտուղարների ասոցիացիան և պառլամենտական փաստաթղթերի միջազգային կենտրոնը: Մ. մ. հրատարակում է «Բյուլետեն ինտերպառլամենտեր» («Bulletin Interparlamentaire») պարբերականը: ՍՍՀՄ պառլամենտական խումբը միության անդամ է 1955-ից: *Հ. Խաչատրյան*

**ՄԻՋՍԱՌՑԱԴԱՇՏԱՅԻՆ ԺԱՄԱՆԱԿԱՄԻՋՈՑՆԵՐ**, ժամանակահատվածներ, որոնք բաժանում են միմյանցից անթրոպոգենի ցուրտ *սառցադաշտային ժամանակաշրջանները*: Բնութագրվել են համեմատաբար տաք կլիմայով և բարեխառն լայնություններում սառցածածկի լրիվ անհետացմամբ:

**ՄԻՋՏՆՏԵՍԱՅԻՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԵՎ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, փայատիրական հիմունքներով ստեղծված գյուղատնտեսական, շինարարական և արդյունաբերական ձեռնարկություններ ու կազմակերպություններ. ՍՍՀՄ գյուղատնտեսության մեջ միջտնտեսային կապերի ձև: Ստեղծում են կոլտնտեսությունները, սովետական տնտեսությունները և պետ., կոոպերատիվ ու հասարակական այլ ձեռնարկություններն ու կազմակերպությունները՝ միավորելով ֆինանսական, նյութատեխնիկական և աշխատանքային ռեսուրսների մի մասը: Մ. ձ. և կ-ի գործունեությունը հիմնված է մասնակից-տնտեսությունների կամավորության, իրավական և տնտ. ինքնուրույնության պահպանման սկզբունքի վրա: ՍՍՀՄ-ում լայն տարածում են ստացել 50-ական թթ. վերջերից: Կազմակերպական տեսակետից լինում են՝ միջկոլտնտեսային, սովետական տնտեսությունների և խառը (սովետական տնտեսությունների-կոլտնտեսությունների կամ կոլտնտեսությունների-սովետական տնտեսությունների): Միջկոլտնտեսային և խառը ձեռնարկությունները կազմակերպվում են կոոպերատիվ, իսկ սովետական տնտեսությունների Մ. ձ. և կ. պետ. ձեռնարկությունների փոխհարաբերությունների սկզբունքներով: Մ. ձ. և կ. ստեղծվում (կամ լուծարվում) են կոլտնտեսությունների նախաձեռնությամբ, սովետական տնտեսությունների Մ. ձ. և կ.՝ վերադաս պետ. մարմնի որոշմամբ, միջտնտեսային խառը ձեռնարկությունները՝ կամավոր համաձայնությամբ:

Միջկոլտնտեսային ձեռնարկությունների կազմակերպման հիմքը կոլտնտեսությունների արտադրողական ուժերի զարգացումը և գյուղատնտ. արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման պրոցեսների ուժեղացումն է: Կազմակերպվում են անասնապահական (ֆերմաներ, բտման կետեր, բուծարաններ են), գյուղատնտ. հումքի արդ. վերամշակման (պահածոների գործարաններ, արտադրամասեր են) ձեռնարկություններ, շինարարական, տրանսպորտային, ճանապարհաշինական կազմակերպություններ, սոցիալ-կուլտուրական հիմնարկություններ:

Սովետական տնտեսությունների Մ. ձ. և կ. ձևավորվել են 60—70-ական թթ.: Մի շարք երկրամասերում և շրջաններում գործում են սովետական տնտեսությունների արտադրական միավորումներ, մասնագիտացված տրեստներ, ագրոարդյունաբերական միավորումներ («Թռչնարդ», «Անասնարդ» են): Ձեռնարկությունների այս խմբի մեջ են մտնում նաև սովետական տնտեսություն-տեխնիկումները:

1970-ական թթ. միջկոլտնտեսային ձեռնարկությունների գործունեությանը սկսեցին լայնորեն մասնակցել նաև սովետական տնտեսությունները, և ստեղծվեցին խառը ձեռնարկություններ, որոնք սոցիալ-տնտեսական տեսակետից առավել հեռանկարային են:

Մ. ձ. և կ-ի բարձրագույն մարմինը մասնակից-տնտեսությունների լիազոր ներկայացուցիչների ժողովն է, տնտ. գործունեությունը ղեկավարում է խորհուրդը

(ընտրում է ժողովը)։ Ամենօրյա ղեկավարությունն իրականացնում է դիրեկտորը, որը միաժամանակ խորհրդի նախագահն է։ Լիազորների ընդհանուր ժողովի որոշմամբ ձեռնարկության եկամտի մի մասը բաշխվում է փայատեր տնտեսությունների միջև, իսկ մյուս մասը թողնվում ձեռնարկությանը՝ *միջտնտեսային ֆոնդերի* գոյացման և ընդլայնման համար։ Ժողովի որոշմամբ կարող է դադարեցվել ձեռնարկության գործունեությունը, իսկ միջոցները բաժանվել մասնակից տնտեսությունների միջև՝ փայաբաժնի համապատասխան չափով։

1980-ին ՍՍՀՄ-ում գործում էին 9240, ՀՍՍՀ-ում՝ միջկոլտնտեսային (Շահումյանի շրջանում)՝ 5, սովետական տնտեսությունների (Ղուկասյանի շրջանում)՝ 5 և խառը՝ 53 Մ. ձ. և կ.։

*Կ. Վարդանյան*

**ՄԻՋՏՆՏԵՍԱՅԻՆ ՖՈՆԴԵՐ**, *միջտնտեսային ձեռնարկությունների և կազմակերպությունների* արտադրական, ոչ արտադրական նյութական ու դրամական միջոցներ։ Գոյանում են կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների, պետ. և կոոպերատիվ այլ կազմակերպությունների նյութական ու դրամական միջոցների մի մասի (փայավճարների) կամավոր միավորման, միջտնտեսային ձեռնարկությունների արտադրատնտեսական գործունեությունից ստացվող շահույթից մասհանումների և այլ աղբյուրների հաշվին։ Ըստ միջտնտեսային ձեռնարկությունների կանոնադրության, ստեղծվում են հետևյալ Մ. ֆ.՝ կանոնադրական (հիմնական և շրջանառու), ամորտիզացիոն, արտադրության ամրապնդման և ընդլայնման, նյութական խրախուսման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության, պահեստային (ապահովագրական) ևն։ Դրանք փայատեր-տնտեսությունների հանրային սեփականությունն են և անբաժանելի են (բացի միջտնտեսային ձեռնարկության լուծարքի դեպքից)։

Գյուղատնտեսության մեջ միջտնտեսային կապերի զարգացման շնորհիվ Մ. ֆ. աճում են բարձր տեմպերով։ 1979-ի սկզբին, 1970-ի համեմատ, ՍՍՀՄ միջտնտեսային ձեռնարկությունների հիմնական ֆոնդերն աճել են 2,1 անգամ, կազմել 13,4 մլրդ ռ., ՀՍՍՀ-ում՝ 11,4 անգամ և կազմել 18,3 մլն ռ.։

**ՄԻՋՈՒԿ** ա տ ո մ ի, *ատոմի* կենտրոնական մասը, որն ունի շատ փոքր գծային չափեր ($10^{-13}$—$10^{-12}$ *սմ*) և դրական էլեկտրական լիցք։ Մ-ում է կենտրոնացած ատոմի համարյա ամբողջ զանգվածը։ Մ-ի գոյությունը հայտնագործել է Է. *Ռեզերֆորդը* (1911)։ Նկատելով, որ նյութի միջով անցնելիս α-մասնիկները հաճախ ցրվում են սպասվածից ավելի մեծ անկյունով, նա ենթադրել է, որ ատոմի դրական լիցքը կենտրոնացած է փոքր չափեր ունեցող Մ-ում։ Մինչ այդ իշխողը Ջ. *Թոմսոնի* այն պատկերացումն էր, թե դրական լիցքը հավասարաչափ բաշխված է ատոմի ամբողջ ծավալում։ Ռեզերֆորդի գաղափարի ճանաչման գործում նշանակալի դեր են կատարել Ն. *Բորի* պոստուլատները (1913)։ Մ-ի տեսության զարգացման համար էական նշանակություն են ունեցել Հ. Մոզլիի, Ջ. Չադվիկի, Դ. Դ. Իվանենկոյի, Վ. Հայզենբերգի և այլոց աշխատանքները։ Ժամանակակից *միջուկային ֆիզիկայի* պատկերացումների համաձայն, Մ. բաղկացած է նուկլոններից՝ *պրոտոններից* և *նեյտրոններից*։ Պրոտոնների թիվը (Z) որոշում է տվյալ քիմ. տարրի կարգաթիվը կամ ատոմական համարը և հավասար է չեզոք ատոմի էլեկտրոնների թվին։ Նեյտրոնների թիվը՝ $N=A-Z$, որտեղ A-ն Մ-ի զանգվածի թիվն է, այսինքն՝ ատոմական զանգվածը՝ արտահայտված զանգվածի ատոմական միավորներով։ Նուկլոնները միմյանց հետ կապված են *միջուկային ուժերով* և կազմում են չափազանց խիտ ($\sim 10^{14}$ *գ/սմ*$^3$) միջուկային մատերիա։ Մ-ները նշանակվում են համապատասխան քիմ. տարրի սիմվոլով (X), որին որպես ինդեքս կցվում են A, Z, N թվերը՝ $^{N}_{Z}X^{A}$ կամ կարճ՝ $^{A}_{Z}X$։ Օրինակ, թթվածնի Մ. նշանակվում է $^{8}_{8}O^{16}$ կամ $^{16}_{8}O$։ Թեթևագույն Մ-ներից մի քանիսն ունեն իրենց հատուկ նշանակումը և անվանումը. այսպես, $^{1}_{1}H$, $^{2}_{1}H$, $^{3}_{1}H$, $^{4}_{2}He$ Մ-ները համապատասխանաբար նշանակվում են p, d, t, α տառերով և կոչվում պրոտոն, դեյտրոն, տրիտոն և ալֆա-մասնիկ։ Բնության մեջ տարածված ամենաթեթև Մ. ջրածնինն է ($^{1}_{1}H$), ամենածանրը՝ ուրանինը ($^{239}_{92}U$)։ Ներկայումս արհեստական եղանակով ստացվել են ուրանից ավելի ծանր՝ *տրանսուրանային տարրերի* Մ-ներ (մինչև $Z=106$ կարգաթվով)։ Հնարավոր է նաև $Z=114$ և ավելի մեծ կարգաթվով Մ-ների գոյությունը, քանի որ տեսական որոշ կանխագուշակումների համաձայն այդպիսի Մ-ները պետք է լինեն բավական կայուն և արագորեն չտրոհվեն, ինչպես տրանսուրանային տարրերի մեծ մասը։

Միևնույն կարգաթիվ ունեցող, բայց զանգվածի թվով (հետևաբար և նեյտրոնների թվով) տարբերվող Մ-ները կազմում են միևնույն քիմ. տարրի *իզոտոպները*։ Օրինակ, թթվածինն ունի մի քանի իզոտոպներ՝ $^{14}_{8}O$, $^{15}_{8}O$, $^{16}_{8}O$ ևն։ Հայտնի են տարբեր տարրերի 1200-ից ավելի իզոտոպներ, որոնց մեծ մասն ստացվում է արագացուցիչներում և միջուկային ռեակտորներում ընթացող զանազան *միջուկային ռեակցիաների* ժամանակ։ Միևնույն A, բայց տարբեր Z և N ունեցող Մ-ները կոչվում են *իզոբար միջուկներ* կամ իզոբարներ (օրինակ, $^{14}_{6}C$, $^{14}_{7}N$, $^{14}_{8}O$), իսկ միևնույն N, բայց տարբեր A և Z ունեցողները՝ *իզոտոններ* (օրինակ, $^{5}_{2}He$, $^{6}_{3}Li$, $^{7}_{4}Be$):)։ Հազվադեպ հանդիպում են այնպիսի Մ-ներ, որոնց Z-ը, N-ը և A-ն նույնն են, սակայն կիսատրոհման պարբերությունները՝ տարբեր. դրանք կոչվում են իզոմերներ (տես *Իզոմերիա միջուկային*)։

Մ-ի պրոտոնների միջև, բացի միջուկային ուժերից (ուժեղ փոխազդեցություն), գործում են նաև էլեկտրական (կուլոնյան) վանողական ուժեր, որոնք ձգտում են տրոհել Մ.։ Մ-ի կայունությունը բնութագրվում է *կապի էներգիայով* կամ մեկ նուկլոնին բաժին ընկնող կապի տեսակարար էներգիայով։ Վերջինս միջին տարրերի դեպքում մոտավորապես հավասար է 8 *ՄէՎ*-ի և փոքրանում է ամենաթեթև ու ամենածանր Մ-ների համար. այն, ընդհանուր առմամբ, տարբեր է նաև միևնույն Մ-ի նեյտրոնների և պրոտոնների համար։ Առավել կայուն են այն Մ-ները, որոնք պարունակում են զույգ թվով պրոտոններ և զույգ թվով նեյտրոններ (այսպես կոչված, զույգ-զույգ Մ-ներ)։ Համեմատաբար պակաս կայունություն են ցուցաբերում զույգ-կենտ և կենտ-զույգ Մ-ները, իսկ ամենակայունը կենտ-կենտ Մ-ներն են։ Այն Մ-ները, որոնք պարունակում են 2, 8, 20, 50, 82 և 126 պրոտոն կամ նեյտրոն, ցուցաբերում են առանձնահատուկ կայունություն։ Այդ թվերը և համապատասխան Մ-ները կոչվում են «մոգական»։ Այդպիսիք են, օրինակ, $^{16}_{8}O$, $^{1\ 0}_{50}Sn$ Մ-ները։

Կայուն Մ-ներն ունեն նեյտրոնների և պրոտոնների թվերի որոշակի հարաբերություն՝ N/Z. թեթև տարրերի համար $N/Z\approx 1$ կամ որ նույնն է՝ $A/Z\approx 2$։ A-ի մեծացման հետ N/Z հարաբերությունն աճում է և ամենածանր միջուկների համար դառնում $\sim 1{,}6$։ Տվյալ տարրի այն իզոտոպները, որոնք ունեն կայունության պայմանից ավելի կամ պակաս թվով նեյտրոններ, անկայուն են և ռադիոակտիվ տրոհման (բետա-տրոհում, ալֆա-տրոհում) հետևանքով որոշակի ժամանակամիջոցից՝ կ ի ս ա տ ր ո հ մ ա ն պ ա ր բ ե ր ու թ յ ու ն ի ց հետո ի վերջո ինքնակամ վերածվում են կայուն Մ-ների։ Ծանր Մ-ները ($Z>84$) տրոհվում են նաև ճեղքման հետևանքով (տես *Միջուկի ճեղքում*)։ Երբ Մ-ները բախվում են տարրական մասնիկների կամ այլ Մ-ների հետ, առաջանում են գրգռված կամ բաղադրյալ Մ-ներ, որոնք անորոշությունների առընչությամբ որոշվող ժամանակահատվածներից հետո տրոհվում են գամմա-ճառագայթմամբ կամ այլ ճանապարհով։

Բացի վերոհիշյալ մեծություններից, Մ-ի վիճակը նկարագրվում է նաև որոշակի բնութագրական մեծություններով կամ քվանտային թվերով։ Դրանցից է Մ-ի սեփական մեխանիկական մոմենտը՝ *սպինը* (I), որը հավասար է Մ. կազմող նուկլոնների ուղեծրային անկյունային մոմենտների և սպինների երկրաչափական գումարին։ Կենտ A-ով չգրգռված Մ-ների սպինը կենտ է (միավորը Պլանկի հաստատունի կեսն է՝ ħ/2)։ Մ-ի կարևոր բնութագրերից է մագնիսական մոմենտը՝ μ-ն (տես *Միջուկային մոմենտներ*), որը չափվում է միջուկային մագնետոններով և համեմատական է Մ-ի սպինին։ Մագնիսական մոմենտը պայմանավորված է Մ-ում պրոտոնների շարժումով, պրոտոնների և նեյտրոնների սեփական մագնիսական մոմենտներով։ Որոշ Մ-ներ ունեն քվադրուպոլ էլեկտրական մոմենտ (Q), որը ցույց է տալիս, թե էլեկտրական լիցքի բաշխումը տվյալ Մ-ում որքանով է տարբերվում գնդային սիմետրիայից։ Զույգ-զույգ Մ-ների $I=\mu=Q=0$։ Մ-ների կարևոր քվանտային թվերից են նաև *իզոտոպ սպինը*, որը հավասար է բաղադրյալ նուկլոնների

իզոտոպ սպինների վեկտորական գումարին, *զույգությունը* են: Մ-ների չափերը, ինչպես նաև դրանցում էլեկտրական լիցքի և մագնիսական մոմենտի բաշխումը՝ *ֆորմֆակտորները*, փորձնականորեն ամենից լավ որոշվում են Մ-ներից բարձր էներգիայի էլեկտրոնների առաձգական ցրման ժամանակ: Ռ. Հոֆստեդերի, Մ. Յարյանի և այլոց փորձերը հաստատեցին, որ Մ-ների շառավիղներն արտահայտվում են $R=r_0A^{1/3}$ բանաձևով, որտեղ $r_0=1,07\cdot10^{-13}$ *սմ*:

Արդի միջուկային ֆիզիկայում Մ-ների հատկությունների նկարագրման համար օգտագործվում են տարբեր *միջուկային մոդելներ*, որոնցից ամենատարածվածը կաթիլային, թաղանթային և ընդհանրացված մոդելներն են: Կաթիլային մոդելի օգնությամբ Ն. Բորը և Յա. Ֆրենկելը բացատրել են Մ-ների ճեղքման և միջուկային որոշ ռեակցիաների մեխանիզմը: Թաղանթային մոդելը հաջողությամբ մեկնաբանում է Մ-ների էներգետիկ մակարդակները և ճշգրիտ բացատրում «մոգական» Մ-ների կայունությունը, այնպես, ինչպես իներտ գազերի քիմ. իներտությունը բացատրվում է լրացված էլեկտրոնային թաղանթներով: Ընդհանրացված մոդելը ոչ միայն ընդհանրացնում է կաթիլային և թաղանթային մոդելների հիմնական հատկությունները, այլև թույլ է տալիս կատարել նոր կանխագուշակումներ: Բարձր էներգիաների ֆիզիկայում տարրական մասնիկների և Մ-ների փոխազդեցության նկարագրության համար երբեմն օգտվում են Մ-ի օպտիկական մոդելից, որը Մ. դիտարկում է իբրև որոշակի բեկման ցուցիչ և կլանման գործակից ունեցող մի համասեռ գունդ:

Միջուկային բոլոր մոդելներն էլ մոտավոր բնույթ ունեն և աշխատանքային վարկածների դեր են կատարում: Մինչդեռ Մ-ների առավել կարևոր հատկությունների հետևողական բացատրությունը, հիմնված ֆիզիկական ընդհանուր սկզբունքների և նուկլոնների փոխազդեցության վերաբերյալ հայտնի տվյալների վրա, մնում է արդի ֆիզիկայի չլուծված հիմնական պրոբլեմներից մեկը:

*Գրկ.* Ландау Л. Д., Смородинский Я. А., Лекции по теории атомного ядра, М., 1955; Бете Г., Моррисон Ф., Элементарная теория ядра, пер. с англ., М., 1958; Давыдов А. С., Теория атомного ядра, М., 1958; Ситенко А. Г., Тартаковский В. К., Лекции по теории ядра, М., 1972. *Կ. Իսպիրյան*

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ԵՐԿՐԱՖԻԶԻԿԱ**, միջուկային երևույթների վրա հիմնված երկրաֆիզիկական մեթոդների ամբողջություն: Ներկայումս Մ. ե-ի մեջ տարբերում են երեք հիմնական ուղղություն՝ ռադիոմետրիկ, միջուկային և ռադիացիոն մեթոդների մշակում ու կիրառում: Ռ ա դ ի ո մ ե տ ր ի կ մ ե թ ո դ ն ե ր ը հիմնված են բնական ռադիոակտիվ տարրերի ռադիոակտիվության երևույթների հետազոտման վրա և օգտագործվում են հիմնականում այդ ու նրանց հետ համահարաբերակցող տարրերի (հազվագյուտ հողեր, մոլիբդեն, ֆոսֆոր) հանքավայրերի որոնման և հետախուզման համար: Մ ի ջ ո ւ կ ա յ ի ն մ ե թ ո դ ն ե ր ը հիմնված են ապարներում ու հանքանյութերում միջուկային ճառագայթման (գլխավորապես նեյտրոնների) ազդեցությամբ ընթացող միջուկային ռեակցիաների օգտագործման վրա և կիրառվում են ոչ ռադիոակտիվ տարրերի (օրինակ, բերիլիումի, բորի, մանգանի, պղնձի, ցինկի) քանակությունների որոշման համար: Ռ ա դ ի ա ց ի ո ն մ ե թ ո դ ն ե ր ը հիմնված են ռադիոակտիվ ճառագայթումների և ապարների ու հանքանյութերի փոխազդեցության վրա և օգտագործվում են նրանց մեջ հանքային բաղադրամասերի քանակությունների որոշման համար:

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ԶԵՆՔ**, զենք, որի ոչնչացման միջոցը միջուկային լիցքն է: Մ. զ. մի ամբողջություն է՝ բաղկացած միջուկային ռազմամթերքից, այն նպատակակետին հասցնելու միջոցից (հրթիռ, տորպեդ, ինքնաթիռ, հրետանային արկ), ինչպես նաև կառավարման միջոցներից, որոնք ապահովում են ռազմամթերքի նըպատակակետին դիպչելը: Տարբերում են միջուկային և ջերմամիջուկային զենքեր: Մ. զ-ի գործողությունը հիմնված է *միջուկային պայթյունի* ոչնչացնող գործոնների օգտագործման վրա: Որպես զանգվածային ոչնչացման զենք, Մ. զ. նախատեսված է կարճ ժամանակամիջոցում վարչական կենտրոնների, արդ. և ռազմ. օբյեկտների ավերման, զորքերի խմբավորումների, նավատորմի ուժերի ոչնչացման, զանգվածային ավերման գոտիներ, ջրածածկումներ, հրդեհներ, միջավայրի ռադիոակտիվ վարակում առաջացնելու համար: Մ. զ. բարոյական և հոգեբանական ուժեղ ներգործություն է ունենում մարդկանց վրա: Միջուկային ռազմամթերքի հզորությունը գնահատվում է տ ր ո տ ի լ ա յ ի ն հ ա մ ա ր ժ ե ք ո վ (եռնիտրոտոլուոլ քիմ. պայթուցիկ նյութի պայմանական լիցքի այն զանգվածը, որի քայքայման էներգիան հավասար է տվյալ միջուկային պայթյունից անջատվող էներգիային): Ժամանակակից միջուկային ռազմամթերքի տրոտիլային համարժեքը մի քանի տասնյակ *տ*-ից մինչև մի քանի տասնյակ մլն *տ* տրոտիլ է և չափվում է կիլոտոններով (*կտ*) ու մեգատոններով (*Մտ*): Ըստ նշանակման, լիցքերի հզորության, միջուկային ռազմամթերքը նպատակակետին հասցնող միջոցների ռազմ. հնարավորությունների Մ. զ. ընդունված է բաժանել ս տ ր ա տ ե գ ի ա կ ա ն (խոր թիկունքում ստրատեգիական կարևոր օբյեկտների ոչնչացման համար. գտնվում է պետության ռազմա-քաղաքական բարձրագույն ղեկավարության տնօրինության տակ), օ պ ե ր ա տ ի վ-տ ա կ տ ի կ ա կ ա ն (օպերատիվ-տակտիկական խորության վրա գտնվող օբյեկտների ոչնչացման համար) և տ ա կ տ ի կ ա կ ա ն (տակտիկական գոտում տեղաբաշխված զորքերի, ռազմ. տեխնիկայի, թիկունքի և այլ օբյեկտների ոչնչացման համար): Մ. զ-ի գործադրման դեպքում կարող են հասցվել առանձին, խմբային կամ զանգվածային միջուկային հարվածներ:

Միջուկային ռազմամթերքի պայթյունի դեպքում առաջանում են մի շարք ոչնչացնող գործոններ՝ հարվածային ալիք, լուսային ճառագայթում, թափանցող ռադիացիա, ռադիոակտիվ վարակում և էլեկտրամագնիսական իմպուլս: Հ ա ր վ ա ծ ա յ ի ն ա լ ի ք ն ազդում է իր ճանապարհին գտնվող բոլոր օբյեկտների վրա՝ կործանելով բազմահարկ շենքեր և սպանելով թաքստոցում չգտնվող մարդկանց: Լ ո ւ ս ա յ ի ն ճ ա ռ ա գ ա յ թ ո ւ մ ը հալում, ածխացնում, դեֆորմացնում և բոցավառում է նյութերը, կենդանի հյուսվածքները տարբեր աստիճանի ծանր այրվածքներ են ստանում: Թ ա փ ա ն ց ո ղ ռ ա դ ի ա ց ի ա ն (գամմա-ճառագայթների և նեյտրոնների հոսք, որի ազդեցությունը տևում է 10—15 *վրկ*) առաջացնում է *ճառագայթային հիվանդություն*: Տեղանքի և այնտեղ գտնվող օբյեկտների ռ ա դ ի ո ա կ տ ի վ վ ա ր ա կ ո ւ մ ը տեղի է ունենում միջուկային պայթյունի ամպից ռադիոակտիվ նյութեր թափվելու և մակածված ռադիացիայի (պայմանավորված միջուկային պայթյունի ակնթարթային նեյտրոնային ու գամմա-ճառագայթման ազդեցությամբ՝ շրջակա միջավայրում ռադիոակտիվ իզոտոպների առաջացմամբ) հետևանքով. մարդկանց և կենդանիներին վնասում է, հիմնականում, արտաքին ճառագայթմամբ, որի ազդեցությունը նըման է թափանցող ռադիացիայի ազդեցությանը: Է լ ե կ տ ր ա մ ա գ ն ի ս ա կ ա ն ի մ պ ո ւ լ ս ը (միջուկային պայթյունի դեպքում առաջացող կարճատև էլեկտրական ու մագնիսական դաշտեր) ազդում է անտենաների, հաղորդալարերի, կաբելային գծերի և կապի միջոցների վրա, շարքից հանում դրանք: Միջուկային լիցքերի կառուցվածքային յուրահատկությունները կարող են մեծապես ազդել ոչնչացնող գործոնների հարաբերակցության վրա. օրինակ, ն ե յ տ ր ո ն ա յ ի ն զ ե ն ք ո ւ մ միջուկային լիցքերն ունեն նեյտրոնային առատ ճառագայթում:

Մ. զ-ի ստեղծումը կապված է *միջուկային ֆիզիկայի* զարգացման հետ: XX դ. 40-ական թթ. ԱՄՆ-ի մի խումբ գիտնականներ մշակեցին միջուկային պայթյունների ֆիզ. սկզբունքները, որոնց հիման վրա իրականացվեց պայթեցումը (տես *Ատոմային ռումբ*): 1952-ին ԱՄՆ-ում պայթեցվեց ջերմամիջուկային սարք՝ 3 *Մտ* հզորությամբ, իսկ 1954-ին փորձարկվեց ամերիկյան առաջին ջերմամիջուկային ավիացիոն ռումբը: ՍՍՀՄ-ում ջերմամիջուկային ռումբը փորձարկվել է 1953-ի օգոստ. 12-ին: 60-ական թթ. Մ. զ. ներդըրվել է զինված ուժերի բոլոր տեսակներում և վճռական ազդեցություն գործել զորքերի ու նավատորմի կազմակերպական կառուցվածքի վրա՝ փոխելով մարտավարության ու պատերազմավարության նախկին պատկերացումները:

Այժմ Մ. զ. ունեն ՍՍՀՄ-ը, ԱՄՆ-ը, Ֆրանսիան, Մեծ Բրիտանիան և Չինաստանը: Գիտատեխնիկական առումով Մ. զ. արտադրելու հնարավորություն ունեն ևս ավելի քան 30 երկիր: Մ. զ. մեծ սպառնալիք է ստեղծել մարդկության համար: Ամերիկյան մասնագետների հաշվումներով 20 *Մտ* հզորությամբ ջերմամիջուկային լիցքի պայթյունը կարող է գետնին հավասարեցնել բոլոր տեսակի շենքերը 24 *կմ* շառավղով և ոչնչացնել ամեն մի

կենդանի էակ՝ պայթյունի էպիկենտրոնից մինչև 140 *կմ* հեռավորության վրա:

Մ. զ-ի արգելումը այսօր առաջնահերթ խնդիր է: Այդ ուղղությամբ կարևոր քայլեր են երեք միջավայրում (մթնոլորտում, տիեզերքում և ջրի տակ) Մ. զ-ի փորձարկումների արգելման (1963), Մ. զ-ի չտարածման (1968), ծովի և օվկիանոսի հատակում ու նրա ընդերքում Մ. զ-ի և զանգվածային ոչնչացման այլ զինատեսակների տեղադրումն արգելող (1971) միջազգային պայմանագրերը, ինչպես նաև սովետա-ամերիկյան մի շարք պայմանագրերի ու համաձայնագրերի (հակահրթիռային պաշտպանության համակարգերի սահմանափակման, միջուկային պատերազմի կանխման, Մ. զ-ի ստորերկրյա փորձարկումների սահմանափակման, ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման վերաբերյալ ևն) կնքումը՝ 1971—79-ին: Սովետական Միությունը հետևողականորեն հանդես է գալիս Մ. զ-ի բոլոր տեսակների արտադրության դադարեցման և նրա պաշարների լիակատար վերացման պահանջով:

*Գրկ.* Атом и оружие, М., 1964; Атомное оружие, пер. с англ., М., 1957; Вооруженные силы капиталистических государств, М., 1971; Ядерный взрыв в космосе, на земле и под землей. Сб. ст., пер. с англ., сост. С. Л. Давыдов, М., 1974.

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ԶԵՆՔԻ ՓՈՐՁԱՐԿՈՒՄՆԵՐԻ ԱՐԳԵԼՄԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐ 1963**, մթնոլորտում, տիեզերական տարածությունում և ջրի տակ, միջազգային պայմանագիր, կնքվել է Մոսկվայում (հայտնի է նաև որպես Մոսկովյան պայմանագիր), օգոստ. 5-ին՝ ՍՍՀՄ-ի, ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի ներկայացուցիչների կողմից և ուժի մեջ մտել 1963-ի հոկտ. 10-ին: Պայմանագրին միացել է ավելի քան 120 (1981-ի տվյալներով) պետություն: Ըստ պայմանագրի, որ բաղկացած է ներածականից և վեց հոդվածներից, մասնակիցները պարտավորվում են արգելել, կանխել ու չիրականացնել միջուկային զենքի կամ որևէ միջուկային պայթեցում իրենց իրավասության կամ վերահսկողության տակ գտնվող միջավայրում: Արգելվում է միջուկային զենքի փորձարկումը մթնոլորտում, նաև տիեզերական տարածության մեջ, ջրի տակ (տերիտորիալ ջրերում կամ բաց ծովում), ինչպես և որևէ այլ միջավայրում, եթե այդպիսի պայթեցումներն առաջ են բերում ռադիոակտիվ նստվածքներ ուրիշ պետությունների տարածքներում: Պայմանագիրն անժամկետ է. նախատեսում է նաև յուրաքանչյուր մասնակցի իրավունքը դուրս գալու նրանից, եթե սահմանված բացառիկ հանգամանքները վտանգի տակ են դնում իր երկրի գերագույն շահերը:

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆ**, տես *Ատոմային էլեկտրակայան*:

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ԷԼԵԿՏՐՈՆԻԿԱ**, *էլեկտրոնիկայի* արդի ճյուղ, որն ընդգրկում է փորձարարական ֆիզիկայի և ատոմային տեխնիկայի տարբեր բնագավառներում միջուկային պրոցեսների չափման, հսկման և ավտոմատ կառավարման համար էլեկտրոնային մեթոդների ու միջոցների մշակման և կիրառման հետ կապված հարցերի ամբողջությունը: Ստեղծվել է XX դ. 40-ական թթ. վերջին, միջուկային ֆիզիկայի ու ռադիոէլեկտրոնիկայի սահմանագծում: Մ. է-ի առաջնահերթ խնդիրը օգտակար ինֆորմացիայի ստացումն է միջուկային ճառագայթումը գրանցող սարքավորումներից: Որպես կանոն, այդ խնդիրը լուծվում է գրանցվող պատահույթները տարրական մասնիկների դետեկտորների օգնությամբ էլեկտրական իմպուլսային կարճ ազդանշանների փոխակերպելու ճանապարհով: Այնուհետև համապատասխան էլեկտրոնային սարքերով կատարվում է այդ ազդանշանների ուժեղացում և օպտիմալ ձևավորում, ինչպես նաև հետաքրքրող պատահույթների առանձնացում ըստ ազդանշանների ամպլիտուդի կամ ձևի և կամ՝ ըստ ազդանշանների հայտնվելու պահի: Հաջորդող էլեկտրոնային չափիչ շղթան սովորաբար իրագործում է ընտրված ազդանշանների ամպլիտուդների կամ դրանց հայտնվելու պահերի միջև ընկած ժամանակահատվածների փոխակերպումը թվանշանային կոդի, ստացվող տվյալների թվանշանային կուտակումը և դրանց արտապատկերումը ինֆորմացիայի տարբեր կրողների վրա: Փոխկապակցված բոլոր չափիչ շղթաներից ստացվող առաջնային ինֆորմացիան փորձի ընթացքում մշակվում է նախնական արագ վերլուծության բազմանցուղի էլեկտրոնային համակարգերով, և որոշվում են հետազոտվող միջուկային պրոցեսը բնութագրող ելակետային պարամետրերը: Ընդ որում Մ. է-ի՝ նման չափիչ համալիրներին ներկայացվող հատկանշական պահանջը բարձր ճշգրտության և առավելագույն արագագործության միաժամանակյա ապահովումն է, որը հնարավորություն է տալիս, օրինակ, գրանցել միջուկների գրգռված վիճակների կյանքի տևողությունը կամ չափել ուսումնասիրվող մասնիկների՝ մի դետեկտորից մյուսը թռչելու ժամանակամիջոցը, $10^{-10}$ *վրկ* ճշտությամբ: Ժամանակակից Մ. է-ի համար բնորոշ է համակարգային մոտեցումը, այսինքն՝ անցումը մասնավոր խնդիրների լուծումից դեպի համատեղելի ընդհատ ինֆորմացիոն-չափիչ համակարգերի ստեղծումը, որոնք ունեն ապարատային միջոցների ճկուն ծրագրային-կառավարվող մոդուլային կառուցվածք և կարող են կիրառվել ամենատարբեր բնագավառների փորձերում:

Մ. է-ի զարգացումը կապված է ինտեգրալ *միկրոէլեկտրոնիկայի* նվաճումների և էլեկտրոնային հաշվողական մեքենաների (ԷՀՄ) ու հեռուստամեխանիկական համակարգերի լայն կիրառման հետ: Ընդ որում ԷՀՄ-ները և նույնիսկ կապակցված մեքենաների ցանցերն օգտագործվում են ինչպես փորձնական տվյալների կուտակման և վերջնական մշակման, այնպես էլ փորձի վերահսկման ու կառավարման համար՝ ժամանակի իրական մասշտաբում ստացվող ինֆորմացիայի ավտոմատ մշակման հիման վրա: Այսպիսի մոտեցումն իր արտացոլումն է գտել Մ. է-ում մշակված CAMAC (Computer Application for Measurement and Control — հաշվողական մեքենաների կիրառումը չափումների և վերահսկման համար) համակարգում: Մ. է-ի մեթոդները լայն տարածում են գտել արդյունաբերության տարբեր ճյուղերում, ատոմային էներգետիկայում, բժշկության, երկրաբանության, ռադիոաստղագիտության մեջ, քիմիայում, կենսաբանական հետազոտություններում:

*Գրկ.* Ковальский Е., Ядерная электроника, пер. с англ., М., 1972; Электронные методы ядерной физики, М., 1973; Современная ядерная электроника, т. 1—2, М., 1974.

*Լ. Խուրշուդյան*

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ԷՆԵՐԳԵՏԻԿԱ**, *էներգետիկայի* ճյուղ, որն օգտագործում է *միջուկային էներգիան*: Մ. է-ի հիմքը *ատոմային էլեկտրակայանն* է (ԱԷԿ): Տեխնիկայի ոչ մի բնագավառ այնքան արագ չի զարգանում, ինչպես Մ. է.: 1954-ին ՍՍՀՄ Օբնինսկ քաղաքում գործարկվեց աշխարհում առաջին ԱԷԿ (հզորությունը՝ 5 *Մվտ*): Այժմ աշխարհի զարգացած երկրներում (ՍՍՀՄ, ՉՍՍՀ, ԲԺՀ, ԳԴՀ, ԱՄՆ, Մեծ Բրիտանիա, Ֆրանսիա, Կանադա, Իտալիա, Ֆինլանդիա ևն) գործող ԱԷԿ-ների 250 ռեակտորային տեղակայանքների ընդհանուր հզորությունն անցնում է 200 մլն *կվտ*-ից: Ըստ կանխագուշակումների 2000-ին էլեկտրաէներգիայի մոտ 40%-ը կարտադրվի ԱԷԿ-ներում:

ԱԷԿ-ների հիմնական էներգաարտադրող հանգույցը *միջուկային ռեակտորն* է, որտեղ էներգիայի անջատումը կատարվում է ծանր տարրերի միջուկների ($U^{235}$, $Pu^{239}$) տրոհման հաշվին: Միջուկային ռեակտորում անջատված ջերմային էներգիայի փոխակերպումը էլեկտրականի սկզբունքորեն չի տարբերվում սովորական ջերմային էլեկտրակայաններում իրականացվող եղանակներից: Մ. է-ի զարգացման սկզբնական շրջանում առաջին հերթին լայն տարածում ստացան ջրով (որպես դանդաղեցուցիչ և ջերմատար) աշխատող ռեակտորները (իրանային և կանալային): ՍՍՀՄ-ում ԱԷԿ-ների շինարարությունը մինչև 2000 թ. հիմնականում ընթանալու է ջրով հովացվող դանդաղ (ջերմային) նեյտրոններով աշխատող իրանային ՎՎԷՌ և կանալային ՌԲՄԿ տիպի ռեակտորների կիրառման ուղիով: Առավել լայն տարածում ստացած ՎՎԷՌ տիպի ռեակտորների զարգացման ամբողջ ընթացքը լավ երևում է Նովովորոնեժի ԱԷԿ-ի օրինակի վրա, որտեղ 1964-ին գործարկվեց 210 *Մվտ*-անոց առաջին էներգաբլոկը, 1969-ին՝ երկրորդ (365 *Մվտ*), 1971—72-ին՝ երրորդ և չորրորդ (440 *Մվտ*) էներգաբլոկները, 1980-ին՝ հինգերորդ գլխային հզոր էներգաբլոկը (1000 *Մվտ*): ՎՎԷՌ-440 էներգաբլոկները հիմք դրեցին ԱԷԿ-ների լայն շինարարությանը: Այդպիսի բլոկներով են սարքավորված Կոլայի ԱԷԿ (գործարկվել է 1973—74-ին, 2×ՎՎԷՌ-440), *Հայկական ատոմակայանը* (1976—79-ին, 2×ՎՎԷՌ—440) ևն: ՎՎԷՌ-1000 էներգաբլոկը հզոր ԱԷԿ-ների շինարարության ծավալման հիմքն է: Ուրան-գրաֆիտային ՌԲՄԿ տիպի եռացող ռեակտորները նույնպես լայնորեն օգտագործվում են հզոր և գերհզոր ԱԷԿ-ներում: ՌԲՄԿ-1000 ռեակտորային երկու էներգաբլոկներով է սարքավորված

Լենինգրադյան ԱԷԿ (գործարկվել է 1973—1975-ին): 1964-ին շահագործման հանձնըվեց Բելոյարսկի ԱԷԿ-ի առաջին էներգաբլոկը՝ 100 *Մվտ* հզորությամբ՝ շոգու միջուկային գերտաքացմամբ (որի շնորհիվ լավանում են ջերմային բնութագրերը): 200 *Մվտ* հզորությամբ երկրորդ էներգաբլոկը գործարկվել է 1967-ին: ՍՍՀՄ-ում մշակված է ջրա-ջրային եռացող ռեակտորի կոնստրուկցիան (միակոնտուր սկըզբունքով), որտեղ շոգին գոյանում է անմիջապես ռեակտորում, ինչպես նաև ՎԿ-500 էներգաբլոկի կոնստրուկցիան, որը տեղադրվում է երկաթբետոնե իրանում:




Միջուկային էներգետիկական տեղակայանք՝ հեղուկ մետաղային ջերմատարրով. *1.* ռեակտոր, *2.* շրջանառու պոմպեր, *3.* ջերմափոխանցման առաջին կոնտուր, *4.* ջերմափոխանցման երկրորդ կոնտուր, *5.* առաջին ջերմափոխանակիչ, *6.* երկրորդ ջերմափոխանակիչ, *7.* շոգեգերտաքացուցիչ, *8.* շոգետուրբին, *9.* էլեկտրական գեներատոր, *10.* կոնդենսատոր, *11.* սնող պոմպ, *12.* պաշտպանիչ էկրան

Դա վերացնում է մեծ չափերի ու զանգվածի մետաղական իրանի կառուցման ու տեղափոխման անհրաժեշտությունը: Մշակվում են ռեակտորային տեղակայանքներ՝ ատոմային ջերմաէլեկտրակենտրոնների ու ջերմամատակարարման ատոմային կայանների համար: ՍՍՀՄ-ում 1974-ից հաջողությամբ է գործում Բիլիբինոյի ատոմային ջերմաէլեկտրակենտրոնը (Մագադանի շրջան), 4×ՎՎԷՌ-12 էներգաբլոկներով 48 *Մվտ* էլեկտրական և 115 *Մվտ* ջերմային հզորությամբ: Մ. է-ի զարգացման առաջընթացում առավել հեռանկարային են արագ նեյտրոններով գործող ռեակտորները, որոնցում հնարավոր է օգտագործել բնության մեջ համեմատաբար շատ տարածված $U^{238}$ վառելիքը, և այն էլ մեծ արդյունավետությամբ, միաժամանակ ստեղծելով արհեստական միջուկային վառելիք՝ $Pu^{239}$:

Մ. է. որոշակի կիրառություն ունի ժողտնտեսության տարբեր բնագավառներում: 1964-ին գործարկվել է արագ նեյտրոններով գործող ռեակտորով և 500 *կվտ* հզորությամբ կիսահաղորդչային ջերմաէլեկտրական փոխակերպիչով սարքավորված «Ռոմաշկա» էներգետիկական տեղակայանքը, որը միջուկային էներգիան անմիջականորեն էլեկտրականի փոխակերպող միջուկային տեղակայանքի նախատիպն է: 1970—71-ին մշակվեցին ջերմաէմիսիոն ռեակտոր-փոխակերպիչները՝ «Տոպազ-1» (հզորությունը՝ 5 *կվտ*) և «Տոպազ-2» (հզորությունը՝ 10 *կվտ*): Մ. է. լայնորեն օգտագործվում է նաև ծովային տրանսպորտում: Միջուկային ուժային տեղակայանքների կիրառման հիմնական բնագավառը ատոմային նավատորմն է, որտեղ գլխավորապես կիրառվում են ջրաջրային ռեակտորներ: ՍՍՀՄ-ում գործարկվել են «Լենին» (1959), «Արկտիկա» (1974), «Սիբիր» (1977) ատոմային սառցահատները: Մ. է. որոշակի կիրառում ունի նաև տիեզերական թռիչքային ապարատներում:

Մ. է-ի զարգացման առավել կատարյալ աստիճանը միջուկային կառավարվող ռեակցիայի հիման վրա ջերմամիջուկային տեղակայանքների ստեղծումն է: Այստեղ, ի տարբերություն սովորական ԱԷԿ-ներում ընթացող ծանր միջուկների տրոհման ռեակցիայի, իրականացվում է թեթև տարրերի (ջրածնի ծանր իզոտոպների՝ դեյտերիումի D և տրիտիումի T) սինթեզի ռեակցիան, որի ընթացքում անջատվում է հսկայական քանակի էներգիա: Կառավարվող ջերմամիջուկային ռեակցիաների իրականացման հնարավոր ուղղություններից ավելի լայն տարածում է ստացել «Տոկամակ» տիպի տեղակայանքներում կիրառվող եղանակը, որը մշակվել է ՍՍՀՄ-ում 1950-ական թթ. սկզբներին, Ի. Վ. Կուրչատովի անվ. ատոմային էներգիայի ինստ-ում:

Ջերմամիջուկային կառավարվող սինթեզի (ռեակցիայի) արդ. մասշտաբներով յուրացումը աշխարհի դժվարություն ներկայացնող գիտատեխնիկական խնդիր է, որի լուծումը մարդկությանը կտա էներգիայի անսպառ աղբյուր:

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ԷՆԵՐԳԻԱ,** ատոմային էներգիա, միջուկային տարբեր ռեակցիաների՝ *միջուկի ճեղքման*, *ջերմամիջուկային ռեակցիաների* և ռադիոակտիվ տրոհման ժամանակ անջատվող էներգիա: Դրսևորվում է որպես ալֆա-, բետա-մասնիկների, նեյտրոնների, ճեղքված միջուկների կինետիկ էներգիա կամ առաքվող գամմա-ճառագայթման էներգիա և կարող է այդ մասնիկների ու ճառագայթների կլանումից հետո փոխարկվել ջերմային կամ էլեկտրական էներգիայի: Ատոմային միջուկների կայունությունը որոշվում է *կապի էներգիայով*: Որքան ավելի կայուն է միջուկը, այնքան մեծ է կապի էներգիան: Մեկ նուկլոնին բաժին ընկնող տեսակարար կապի էներգիան Մենդելեևի պարբերական աղյուսակի միջին տարրերի համար մոտավորապես հավասար է 8 *Մէվ*-ի և փոքրանում է ամենաթեթև ու ամենածանր միջուկների դեպքում: Հետևաբար, էներգիա անջատվում է միջուկային այնպիսի փոխարկումների (ռեակցիաների) ժամանակ, երբ առաջանում են կայուն (միջին մեծության) միջուկներ, այսինքն՝ ծանր միջուկների ճեղքման և թեթև միջուկների միացման դեպքում: Այսպես, ${}^{235}_{92}U + n \rightarrow {}^{236}_{92}U \rightarrow {}^{137}_{52}Te + {}^{97}_{40}Zn + 2n$ ճեղքման ռեակցիայի ժամանակ անջատվում է 100 *Մէվ*-ից ավելի էներգիա՝ իբրև նոր ծնված միջուկների (${}^{137}_{52}Te$ և ${}^{97}_{40}Zn$) և երկու նեյտրոնի կինետիկ էներգիա: Տրիտոնի (${}^{3}_{1}T$) և դեյտրոնի (${}^{2}_{1}D$) միացման ${}^{3}_{1}T + {}^{2}_{1}D \rightarrow {}^{4}_{2}He + n$ ռեակցիայի ժամանակ անջատվում է 17,6 *Մէվ* էներգիա: Միջուկային տարբեր փոխարկումների ընթացքում անջատվող էներգիայի որոշման համար կարելի է օգտվել Էյնշտեյնի հայտնի առնչությունից՝ $\Delta E = \Delta mc^2$, որտեղ $\Delta m$-ը *զանգվածի պակասորդն* է, c-ն՝ լույսի արագությունը վակուումում:

Միջուկների ճեղքման և միացման ռեակցիաների միջոցով օգտակար էներգիայի ստացումը հնարավոր է, եթե նախապես ապահովված են ֆիզիկական որոշ պայմաններ: Օրինակ, որպեսզի T+D սինթեզի ռեակցիան ինքնուրույն ընթանա պլազմայում, անհրաժեշտ է, որ վերջինս տաքանա մինչև միլիոնավոր և ավելի բարձր ջերմաստիճաններ՝ պայման, որ տեղի ունի աստղերի ընդերքում, բայց շատ դժվար է ստեղծել Երկրի վրա: Ներկայումս ընդունված է, որ աստղերի, այդ թվում և Արեգակի էներգիան առաջանում է այդպիսի սինթեզի ռեակցիաների հետևանքով: Միջուկների միացման և ճեղքման շնորհիվ Մ. է. ստանալու հնարավորությունը տեսականորեն ապացուցվել է դեռևս 1930-ական թթ.: Սակայն այդ հնարավորությունը իրականացվեց 1945-ին և 1954-ին, երբ փորձարկվեցին առաջին *միջուկային ռումբերը*՝ ատոմային և ջրածնային ռումբերը: Երկու դեպքում էլ Մ. է. անջատվում էր հուժկու պայթյունի ձևով և հնարավոր չէր այն օգտագործել խաղաղ նպատակներով: Միջուկային վառելիքի խաղաղ օգտագործումը հնարավոր դարձավ *միջուկային ռեակտորների* ստեղծումից հետո, երբ մարդկությունը սովորեց կառավարել շղթայական միջուկային ռեակցիան. ստեղծվեցին ատոմային էլեկտրակայաններ և միջուկային այլ սարքեր: Հավանական է, որ տոկամակների (բարձրջերմաստիճանային պլազմայի ստեղծման ու պահպանման համար նախատեսված սարքեր) և այլ սարքերի օգնությամբ մարդկությունը շուտով կկարողանա կառավարել նաև ջերմամիջուկային սինթեզման ռեակցիաները և կապահովի իրեն էներգիայի անսպառ աղբյուրով. որն անհամեմատ ավելի քիչ ռադիոակտիվ ավելցուկներ ունի և, հետևաբար, ավելի քիչ կաղտոտի շրջապատող միջավայրը: Փոքր հզորության էներգիայի աղբյուրներ ստեղծելու համար մեծ հետաքրքրություն են ներկայացնում *ռադիոակտիվ իզոտոպները*: Այսպես, 1 *գ* ռադիումի տրոհման ժամանակ անջատվում է 3,5 մլն *կկալ* Մ. է., որը բավական է 50 *վտ* հզորության էլեկտրական լամպը յոթ տարի անընդհատ վառելու համար: Սակայն ռադիումը շատ դանդաղ է տրոհվում. 1600 տարվա ընթացքում տրոհվում է 1 *գ* ռադիումի ատոմների կեսը միայն: Ներկայումս $^{210}Po$ և այլ իզոտոպների օգնությամբ ստեղծվել են մի քանի *վտ* հզորության աղբյուրներ:

*Գրկ.* տես *Միջուկ* ատոմի հոդվածի գրականությունը: *Կ. Իսպիրյան*

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՌԵԶՈՆԱՆՍ (ՄՄՌ)**, էլեկտրամագնիսական դաշտի քվանտների ռեզոնանսային կլանումը մագնիսական մոմենտ ունեցող միջուկներով. տեղի ունի պինդ, հեղուկ և գազային նյութերում: *Ռադիոսպեկտրոսկոպիայի* հիմնական մեթոդներից է և բնույթով նման է *էլեկտրոնային պարամագնիսական ռեզոնանսին*: ՄՄՌ-ի հե-

տնողական ուսումնասիրությունն սկըսվեց 1946-ից, երբ ամերիկյան ֆիզիկոսների երկու խմբեր՝ Ֆ. Բլոխի և Է. *Պարսելի* ղեկավարությամբ միաժամանակ և միմյանցից անկախ հայտնաբերեցին պրոտոնների *մագնիսական ռեզոնանսի* երեվույթը պարաֆինում և ջրում: ՄՄՌ նկատելի է $\vec{H}_0$ ուժեղ հաստատուն մագնիսական դաշտում, որին վերադրվում է ավելի թույլ, ռադիոհաճախային $\vec{H}_1$ մագնիսական դաշտ: $\vec{\mu}$ մագնիսական մոմենտ ունեցող միջուկների և $\vec{H}_0$ մագնիսական դաշտի փոխազդեցությունը առաջացնում է $\vec{\mu}$ մոմենտի լարմորյան *պրեցեսիա* $\vec{H}_0$-ի շուրջը՝ $\omega_0=\gamma H_0$ հաճախականությամբ ($\gamma$-ն գիրոմագնիսական հարաբերությունն է՝ միջուկների տվյալ տեսակի համար բնութագրական մեծություն): Պրեցեսիայի հաճախականությունը միջուկներից շատերի համար $H_0=10^4$ *գս* դաշտում 1—10 *Մհց* է: $\vec{\mu}$-ն և $\vec{H}_0$-ն պարունակող հարթության մեջ (նկ.) $\vec{H}_0$-ին ուղղահայաց կիրառվող լրացուցիչ $\vec{H}_1$ մագնիսական դաշտը ձգտում է մեծացնել $\vec{\mu}$-ի և $\vec{H}_0$-ի կազմած $\vartheta$ անկյունը: Եթե $\vec{H}_1$-ը $\vec{\mu}$-ի պրեցեսիային համաժամ պտտվի $\vec{H}_0$-ի շուրջը, ապա $\vartheta$ անկյունը անընդհատ կմեծանա: Ռեզոնանսային հաճախականության ռադիոհաճախային մագնիսական դաշտը կառաջացնի միջուկային մագնիսացվածության պրեցեսիոն շարժում, որը նկատվում է հետազոտվող նյութը շրջապատող կոճում ինդուկցիայի էլշու-ի մակածմամբ: Այս էֆեկտն այնքան էլ մեծ չէ և հաջողվում է հայտնաբերել $10^{17}$—$10^{21}$ միջուկ պարունակող նմուշներում:

Բարդ նյութերի լուծույթներում ՄՄՌ-ի սպեկտրները բաղկացած են բազմաթիվ գծերից: Այդ պայմանավորված է *քիմիական շեղումով* (միջուկը շրջապատող էլեկտրոնների և $\vec{H}_0$ դաշտի փոխազդեցության հետևանք է) և սպին-սպինային փոխազդեցությամբ (պինդ նյութերում և մածուցիկ հեղուկներում այդ փոխազդեցությունը *ուղղակի* է): Միջուկների սպինները նյութում փոխազդում են իրար և միջավայրի հետ: Այդ բերում է ջերմային հավասարակշռության՝ ռելաքսացիայի: Ռելաքսացիայի սպին-ցանցային՝ $T_1$ և սպին-սպինային՝ $T_2$ ժամանակների հակադարձ արժեքները պայմանավորում են սպեկտրային գծի լայնությունը: Պինդ նյութերում $T_2$-ը փոքր է ($\sim10^{-4}$ *վրկ*) և ռեզոնանսային գծերը՝ լայն: Լայն գծերի ՄՄՌ-ի սպեկտրների միջոցով որոշում են միջուկների փոխադարձ դիրքորոշումը և հեռավորությունը: 1980-ին մշակված նոր տեխնիկան հնարավորություն է ընձեռում ստանալ նեղ գծերով (բարձր լուծունակության) ՄՄՌ սպեկտրներ բյուրեղական նյութերի համար բնականոն վիճակում: Դյուրաշարժ հեղուկներում սպին-սպինային ուղղակի փոխազդեցությունը վերանում է, և նշանակալի է դառնում միջուկները կապող էլեկտրոններով իրականացող *անուղղակի* փոխազդեցությունը, որը կախված չէ $\vec{H}_0$-ից: Այդ հեղուկներում $I=1/2$ սպինով միջուկների համար ստացվում են նեղ գծերով ՄՄՌ սպեկտրներ: Եթե միջուկները համարժեք վիճակում են, ապա ստացվում են եզակի՝ սինգլետ գծեր ($C_6H_6$, $C_6H_{12}$, $H_2O$ ևն): Տարբեր վիճակներում գտնվող միջուկներ պարունակող միացության սպեկտրները բաղկացած են տարբեր գծերից, որոնց հեռավորությունը՝ քիմ. շեղումը կախված է $\vec{H}_0$ դաշտի արժեքից: ՄՄՌ սպեկտրների վերլուծությունը պատկերացում է տալիս հեղուկների, պինդ նյութերի և մոլեկուլների կառուցվածքի մասին: Այն օրգ. մոլեկուլների կառուցվածքի որոշման տարածված եղանակ է: ՄՄՌ կիրառվում է քիմ. ռեակցիաների մեխանիզմը և կինետիկան ուսումնասիրելու, մագնիսական դաշտը չափող և կայունացնող սարքեր պատրաստելու համար և այլ նպատակներով:



Միջուկի մագնիսական մոմենտի ($\mu$) պրեցեսիան $H_0$ դաշտում. $\vartheta$-ն պրեցեսիայի անկյունն է:

*Գրկ.* Абрагам А., Ядерный магнетизм, пер. с англ., М., 1963; Сликтер Ч., Основы теории магнитного резонанса с примерами из физики твердого тела, [пер.], М., 1967.

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՄՈԴԵԼՆԵՐ**, ատոմային *միջուկների* նկարագրության մոտավոր մեթոդներ, որոնք հնարավորություն են տալիս միջուկը նույնացնել ֆիզիկական այնպիսի համակարգի հետ, որի հատկությունները լավ ուսումնասիրված են կամ ենթարկվում են համեմատաբար պարզ տեսական վերլուծության: Տարբերում են ուժեղ փոխազդեցությամբ բնորոշվող Մ. մ., որտեղ նուկլոններն ամուր կապված են միմյանց, անկախ մարմինների մոդելներ, որոնցում նուկլոնները շարժվում են գրեթե իրարից անկախ, և համակցված մոդելներ, որտեղ հաշվի են առնվում միջուկներում նուկլոնների վարքի երկու կողմերը: Առաջին դասին են պատկանում հեղուկ կաթիլի մոդելը, հիդրոդինամիկ մոդելը, բաղադրիչ միջուկի մոդելը, ալֆա-մասնիկային մոդելը: Մ. մ-ի երկրորդ դասն ընդգրկում է ֆերմի-գազի մոդելը, թաղանթների մոդելը և միամասնիկ ու բազմամասնիկ թաղանթային մոդելների բազմապիսի ձևափոխությունները, դեֆորմացված միջուկների թաղանթների մոդելը, պոտենցիալ հորի մոդելը, օպտիկական մոդելը ևն: Համակցված մոդելներին են պատկանում ընդհանրացված մոդելը և դրա ձևափոխությունները (կոլեկտիվ մոդել, պտտական մոդել, սֆերոիդալ հենքի մոդել, ոչ առանցքային մոդել ևն): Մ. մ-ի օգնությամբ նկարագրվում են միջուկի ընդհանուր հատկությունները, գրգռված վիճակների սպեկտրը, ցածր էներգիայի դեպքում միջուկային ռեակցիաների առանձնահատկությունները, միջուկներից էլեկտրոնների և ֆոտոնների ցրումը, կուլոնյան գրգռումը ևն: Մ. մ. մեծ քանակությամբ փորձառական փաստեր համակարգելու անհրաժեշտ գործիք են: Միջուկի միկրոսկոպիկ տեսության զարգացումը, որը միջուկը դիտում է իբրև միմյանց հետ փոխազդող բազմաթիվ պրոտոնների և նեյտրոնների մի ամբողջություն, թույլ է տալիս ինչ-որ չափով հիմնավորել բազմաթիվ ֆենոմենոլոգիական Մ. մ., հասկանալ դրանց հիմքում ընկած տարբեր, խոր հակասական դրույթների ներքին միասնությունը: Միևնույն ժամանակ երևան են եկել զույգ կոռելյացիաներով նոր մոդելներ, որոնցում հաշվի են առնվում նուկլոնների մնացորդային փոխազդեցությունները, որոնք չեն մտել թաղանթների մոդելի միջին պոտենցիալ: Այդ նոր դասին է պատկանում գերհոսուն մոդելը, որտեղ հաշվի են առնվում նուկլոնների զույգված մնացորդային փոխազդեցությունները, որոնք հանգեցնում են զրո սպինով նուկլոնային զույգի առաջացման: Գոյություն ունի նաև անվերջ միջուկային մատերիայի մոդել, որը չնայած անվերջ սահմանային պայմանների պատճառով խիստ տարբերվում է իրական միջուկից, սակայն կարող է պարզաբանել միջուկային որոշ առանձնահատկություններ, ինչպես նուկլոնի կապի էներգիան, միջուկի հավասարակշռված խտությունը: Համակարգի անվերջության շնորհիվ առաջ են գալիս սիմետրիայով պայմանավորված մի շարք առանձնահատկություններ, որոնք հեշտացնում են խնդիրը վերջավոր համակարգի համեմատությամբ:

*Գրկ.* Айзенберг И., Грайнер В., Модели ядер, пер. с англ., М., 1975.

*Ռ. Սարդարյան*

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՄՈՄԵՆՏՆԵՐ**, ատոմային *միջուկների* ներքին առանձնահատկությունները բնութագրող մեծություններ: Տարբերում են շարժման քանակի մոմենտներ, որոնք բնութագրում են միջուկների, որպես նուկլոններից բաղկացած բարդ օբյեկտների, մեխանիկական հատկությունները և էլեկտրամագնիսական մոմենտներ, որոնք բնութագրում են միջուկների էլեկտրամագնիսական հատկությունները: Շարժման քանակի մոմենտը կամ միջուկի *սպինը* կարող է ընդունել ամբողջ և կիսամբողջ թվային արժեքներ: Զույգ թվով պրոտոններից և զույգ թվով նեյտրոններից կազմված միջուկի սպինը հիմնական վիճակում հավասար է զրոյի: Կենտ միջուկների սպինն ընդունում է կիսամբողջ արժեքներ և որոշվում վերջին չզույգված՝ կենտ նուկլոնի սեփական շարժման քանակի մոմենտով և ուղեծրային շարժմամբ, իսկ կենտ թվով պրոտոններից և կենտ թվով նեյտրոններից կազմված միջուկի սպինն ունենում է ամբողջական՝ զրոյից տարբեր արժեք, և որոշվում է չզույգված պրոտոնով ու նեյտրոնով: Զրոյից տարբեր սպինով *միջուկի մագնիսական մոմենտը*, որը ծագում է էլեկտրական լիցքերի շարժման

հետևանքով, նույնպես տարբեր է զրոյից: Միջուկի էլեկտրական դիպոլային մոմենտը հավասար է զրոյի. այդ մասին է վկայում հիմնական վիճակում միջուկներում սիմետրիայի կենտրոնի առկայությունը: Միջուկի սիմետրիայի հատկություններից հետևում է ավելի ընդհանուր կանոն՝ բոլոր կենտ էլեկտրական մուլտիպոլները (դիպոլային էլեկտրական մոմենտ, օկտուպոլային էլեկտրական մոմենտ ևն) և զույգ մագնիսական մուլտիպոլները (մագնիսական քվադրուպոլային մոմենտ, մագնիսական հեկսա-դեկապոլային մոմենտ ևն) հավասար են զրոյի: Զրոյից տարբեր էլեկտրական քվադրուպոլային մոմենտը բնութագրում է միջուկում լիցքի բաշխման շեղումը ոլորտային սիմետրիայից: *Ռ. Սարդարյան*

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՇՂԹԱՅԱԿԱՆ ՌԵԱԿՑԻԱ**, տես *Միջուկային պայթյուն*:

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՊԱՅԹՅՈՒՆ**, *միջուկային էներգիայի* անջատումով հարուցված վիթխարի չափերով և ավերման ուժով պայթյուն: Միջուկային էներգիայի յուրացման հնարավորություններին ֆիզիկոսներն ընդհուպ մոտեցան 1939—45-ի երկրորդ համաշխարհային պատերազմի սկզբներին: Առաջին, այսպես կոչված, *ատոմային ռումբը* ստեղծվեց ԱՄՆ-ում: Առաջին փորձնական Մ. պ. տեղի է ունեցել 1945-ի հուլիսի 16-ին, Ալամոգորդոյի մոտ (Նյու Մեքսիկոյի նահանգ, ԱՄՆ): ՍՍՀՄ-ում առաջին Մ. պ. իրագործվել է 1949-ի օգոստոսին:

Մ. պ-ի կարող են հանգեցնել կամ ծանր միջուկների (օրինակ, $^{235}U$ և $^{239}Pu$) ճեղքման միջուկային շղթայական ռեակցիան, կամ ավելի թեթև միջուկներից հելիումի միջուկների սինթեզման *ջերմամիջուկային ռեակցիաները*: Նեյտրոն զավթելիս $^{235}U$ և $^{239}Pu$ միջուկները ճեղքվում են միջին ատոմական զանգվածով երկու բեկորային միջուկների, ընդ որում ծնվում են նաև մի քանի (սովորաբար երկուսից-երեք) նեյտրոններ: Բոլոր դուստր-մասնիկների զանգվածների գումարը փոքր է սկզբնական միջուկի զանգվածից $\Delta m$ մեծությամբ, որը կոչվում է *զանգվածի պակասորդ*: Ըստ Էյնշտեյնի հավասարման զանգվածի պակասորդին համապատասխանում է $\Delta E=\Delta mc^2$ էներգիա (c լույսի արագությունն է), որը ճեղքման արգասիքների կապի էներգիան է սկզբնական միջուկում: Արագ զարգացող ճեղքման միջուկային *շղթայական ռեակցիայի* դեպքում այդ էներգիայի անջատումն էլ առաջացնում է պայթյուն: Ճեղքվող մեկ միջուկի համար $\Delta E$ էներգիան մոտ 200 *Մէվ* է: 1 *կգ* $^{235}U$-ում կամ $^{239}Pu$-ում պարունակվում է $2,5\cdot10^{24}$ միջուկ, որոնց բաժանման դեպքում անջատվում է մոտ $10^{21}$ *էրգ*-ի հավասար վիթխարի էներգիա: Ճեղքման շղթայական ռեակցիա ընթանալու հնարավորությունը պայմանավորված է ճեղքման գործողության ընթացքում ծնվող մեկից ավելի նեյտրոններով: Դրանցից յուրաքանչյուրը նույնպես կարող է միջուկի ճեղքում առաջացնել: Նեյտրոնների հաջորդ սերունդը ճեղքում է այլ միջուկներ ևն: Օրինակ, եթե յուրաքանչյուր սերնդի երկուական նեյտրոններ են ճեղքում առաջացնում, ապա 80 սերունդ հետո մեկ նեյտրոնից սկսված ռեակցիան կհանգեցնի 1 *կգ* նյութի բոլոր միջուկների տրոհման: Սովորաբար ոչ բոլոր նեյտրոններն են միջուկի ճեղքում առաջ բերում, դրանց մի մասը կորչում է: Եթե կորուստները շատ մեծ են, ապա շղթայական ռեակցիան չի կարող զարգանալ: Առանձին նեյտրոնի կորստի հավանականությունը այնքան մեծ է, որքան փոքր են տրոհվող նյութի գծային չափերն ու զանգվածը: Նյութում շղթայական ռեակցիայի առաջացման համար անհրաժեշտ պայմանները կոչվում են կրիտիկական: Այդ պայմանները բնորոշվում են նյութի խտությամբ, երկրաչափական ձևով և զանգվածով (օրինակ, գոյություն ունի *կրիտիկական զանգված*): Միջուկային լիցքում ճեղքվող նյութը տեղաբաշխում են այնպես, որ այն գտնվի մինչկրիտիկական պայմաններում (օրինակ, զանգվածը բաժանում են մասերի): Անհրաժեշտ պահին գերկրիտիկական պայմաններ են ստեղծում (ամբողջ զանգվածը ի մի են բերում) և այդ դեպքում սկսվում է շղթայական ռեակցիա: Զանգվածն անհրաժեշտ է շատ արագ կենտրոնացնել, որպեսզի ռեակցիան ընթանա գերկրիտիկականության հնարավորին չափ բարձր աստիճանի պայմաններում և մինչև շիկացող նյութի ցրիվ գալը նրա հնարավորին չափ մեծ մասը ռեակցիայի մեջ մտնի: Միջուկների ճեղքման շղթայական ռեակցիայի վրա հիմնված Մ. պ-ի հզորության մեծացման հնարավորությունները գործնականում սահմանափակ են, քանի որ չափազանց դժվար է սկզբում մինչկրիտիկական վիճակում գտնվող մեծ զանգվածով նյութը բավականաչափ արագ փոխարկել գերկրիտիկական վիճակի: Մեծ հզորության Մ. պ-ները ստացվում են սինթեզման ջերմամիջուկային ռեակցիաներից:

Միջուկային ռեակցիայի ավարտից անմիջապես հետո (մոտ $10^{-7}$ *վրկ*՝ հաշված ռեակցիայի սկզբից) անջատված էներգիան կուտակվում է խիստ սահմանափակ զանգվածում և ծավալում (1 *տ* և 1 *մ*$^3$ կարգի): Այդ դեպքում ջերմաստիճանը և ճնշումը հասնում են վիթխարի չափերի՝ 10 մլն աստիճան և մլրդ *մթն* կարգի: Էներգիայի էական մասն անջատվում է այդ տաքացած նյութից որպես ռենտգենյան փափուկ ճառագայթում, որը սակայն մեծ հեռավորություններ կարող է տարածվել միայն մթնոլորտի նոսր շերտերում (100 *կմ* և ավելի բարձր) տեղի ունեցած Մ. պ-ի դեպքում: Մնացած բոլոր դեպքերում (պայթյուններ ոչ մեծ բարձրության վրա, գետնի, ջրի տակ) պայթյունի համարյա ողջ էներգիան անցնում է միջուկային լիցքի նյութը անմիջականորեն շրջապատող միջավայր՝ օդ, հող, ջուր: Բարձր ճնշման ազդեցությամբ շրջապատող միջավայրում առաջանում է հուժկու *հարվածային ալիք*: Մ. պ. առաջացնում է նաև թափանցող ռադիացիա՝ գամմա քվանտների և նեյտրոնների հոսքեր, որոնք տանում են պայթյունի էներգիայի մի քանի տոկոսը և մթնոլորտային ճնշման դեպքում տարածվում օդում հարյուրավոր մետրեր հեռավորությամբ:

Մ. պ-ի հարվածային ալիքում օդը տաքանում է մինչև հարյուր հազարավոր աստիճաններ և սկսում է պայծառորեն լուսարձակել. առաջանում է, այսպես կոչված, հրագունդ: Սկզբում հրագնդի մակերևույթը համընկնում է հարվածային ալիքի ճակատին, և դրանք միասին մեծ արագությամբ ընդարձակվում են: Օրինակ, մթնոլորտային ճնշման օդում 20 *կտ* տրոտիլային համարժեքով (տես *Միջուկային զենք*) Մ. պ-ի դեպքում $10^{-4}$ *վրկ* անց հրագնդի շառավիղը 14 *մ* է, 0,01 *վրկ* անց՝ 100 *մ*: Այս փուլում տեղի է ունենում հարվածային ալիքի անջատում հրագնդի սահմանից: Հարվածային ալիքը, արդեն լուսարձակում չառաջացնելով, շատ առաջ է անցնում, իսկ հրագնդի ընդարձակումը դանդաղում և ապա ընդհանրապես դադարում է: 0,1 *վրկ* անց հրագնդի շառավիղը հասնում է իր առավելագույն արժեքին՝ մոտ 150 *մ*-ի. այս փուլում լուսարձակման ջերմաստիճանը կազմում է մոտ 800 K: 1 *վրկ* անց լուսարձակման պայծառությունը սկսում է նվազել և 2—3 *վրկ* անց լուսարձակումը գործնականորեն դադարում է: Լուսային ճառագայթմանը ընկնում է պայթյունի ամբողջ էներգիայի մեկ երրորդ մասը: Այդ ճառագայթումը, որն ավելի պայծառ է, քան Արեգակինը, շատ ուժեղ ոչնչացնող ազդեցություն է թողնում. նույնիսկ 2 *կմ* հեռավորության վրա այն հրդեհներ է առաջացնում, այրում՝ առարկաները, մարդկանց և կենդանիների մոտ այրվածքներ առաջ բերում: 10 *վրկ* անց հարվածային ալիքը Մ. պ-ի կենտրոնից հեռանում է 3,7 *կմ*: Շենքերի, արդյունաբերական կառույցների, ռազմական տեխնիկայի վրա 20 *կտ*-ով Մ. պ-ի հարվածային ալիքը կործանարար ազդեցություն է թողնում մինչև 1 *կմ* շառավղով տարածքում: Ճառագայթման ընդհատումից հետո հրագնդի տաքացած օդը, որն ավելի նոսր է շրջապատող օդից, Արքիմեդի ուժի ազդեցությամբ բարձրանում է վեր (տես *Արքիմեդի օրենք*): Այդ պրոցեսում տաքացած օդն ընդարձակվում ու սառչում է, դրանում տեղի է ունենում գոլորշիների խտացում: Այսպես է առաջանում Մ. պ-ի հարյուրավոր մետրեր տրամագծով քուլայաձև ամպը: Մեկ *ր* անց այն հասնում է 4 *կմ*, 10 *ր* անց՝ 10 *կմ* բարձրության: Հետագայում այդ ամպը, որը պարունակում է միջուկային ռեակցիաների արգասիքներ, արագորեն տարածվում է քամիների և օդային հոսանքների օգնությամբ տասնյակ և հարյուրավոր կիլոմետրեր: Միջուկների ճեղքման արգասիքները ռադիոակտիվ են, դրանք արձակում են $\gamma$-քվանտներ և էլեկտրոններ: Ռադիոակտիվության ազդեցությամբ և ռադիոակտիվ մնացուկների տեղումների հետևանքով ամպի հետագծի տիրույթում տեղի է ունենում տեղանքի ռադիոակտիվ վարակում՝ առաջ բերելով մարդկանց և կենդանիների *ճառագայթային հիվանդություն*:

Ստորջրյա Մ. պ-ի դեպքում ամբողջ էներգիայի մոտավորապես կեսը պարունակվում է սկզբնական հարվածային ալիքում, որը և կատարում է հիմնական ավերածությունները: Ստորջրյա Մ. պ-ին բնորոշ է պայթյունի կենտրոնի շուրջը առաջացող մեծ պղպջակը, որը ժամանակի ընթացքում մարող բաբախող

շարժում է կատարում: Նավեր խորտակող ուժեղ ավերման գործողության շառավիղը մոտ 0,5 *կմ* է: Ստորջրյա Մ. պ-ի դեպքում ջրի մակերևույթի վրա առաջանում է հսկայական սյուն, որը կազմված է ջրափոշուց և ջրացայտերից: Առաջանում են նաև մակերևութային ուժեղ ալիքներ. որոնք տարածվում են բազմաթիվ *կմ*-եր:

Ստորգետնյա Մ. պ-ի դեպքում ավերածությունները նույնպես հարվածային ալիքն է կատարում: Ինչպես և ստորջրյա պայթյունի դեպքում, կենտրոնում առաջանում է բարձր ճնշման գազային պղպջակ: Ստորգետնյա Մ. պ. առաջացնում է ցնցում, որն իր գործողությամբ նման է երկրաշարժի: Այս տիպի Մ. պ-ները կիրառվում են նաև խաղաղ նպատակներով՝ խոշոր չափերի հանքային աշխատանքներ կատարելու, օգտակար հանածոների հանույթի համար ևն:

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՌԵԱԿՏՈՐ**, սարք, որում ընթանում է էներգիայի անջատումով ուղեկցվող կառավարվող *միջուկային ռեակցիա*: Բաղկացած է *միջուկային վառելիք* պարունակող և նեյտրոնների անդրադարձիչով շրջապատված ակտիվ գոտուց, ջերմակրից (նկ.), շղթայական ռեակցիան կարգավորող համակարգից, ճառագայթային պաշտպանության շերտից և հեռակառավարման համակարգից: Ակտիվ գոտում տեղի է ունենում միջուկային վառելիքի տրոհման շղթայական ռեակցիա, որի արագությամբ որոշվում է Մ. ռ-ի հզորությունը: 1 *Մվտ* հզորության ռեակտորում 1 *վրկ*-ում տեղի է ունենում մոտավորապես $3,3 \cdot 10^{16}$ տրոհում: Մ. ռ-ի վիճակը բնութագրվում է նեյտրոնների բազմացման $K_{\text{էֆ}}$ էֆեկտիվ գործակցով (տվյալ սերնդի նեյտրոնների թվի հարաբերությունը նախորդ սերնդի նեյտրոնների թվին) կամ Մ. ռ-ի ռեակտիվությամբ՝ $\rho=(K_{\text{էֆ}}-1)/K_{\text{էֆ}}$: Վերկրիտիկական վիճակում ($K_{\text{էֆ}}>1$, $\rho>0$) նեյտրոնների թիվը ժամանակի ընթացքում աճում է, ենթակրիտիկական վիճակում ($K_{\text{էֆ}}<1$, $\rho<0$)՝ նվազում: Կրիտիկական վիճակում ($K_{\text{էֆ}}=1$, $\rho=0$) ընթանում է այրման ստացիոնար պրոցես՝ տրոհումների թիվը և անջատված ջերմության քանակը ժամանակի ընթացքում հաստատուն են մնում: $K_{\text{էֆ}}=1$ պայմանը կոչվում է կրիտիկականության պայման: Այն որոշվում է նեյտրոնների կլանման ակտերը բնութագրող մեծություններով և ակտիվ գոտու չափերով: Մ. ռ-ի ակտիվ գոտու ծավալը կրիտիկական վիճակում կոչվում է կրիտիկական ծավալ, իսկ տրոհվող նյութի զանգվածը՝ կրիտիկական զանգված: Մաքուր $^{235}U$-ի կրիտիկական զանգվածը 0,8 *կգ* է, $^{239}Pu$-ինը՝ 0,5 *կգ*: Կրիտիկական ծավալը փոքրացնելու նպատակով ակտիվ գոտու կոնստրուկտիվ մասերը պատրաստվում են նեյտրոնների կլանման փոքր կտրվածք ունեցող նյութերից (Al, Zr, պողպատ ևն): Նեյտրոնների արտահոսքը պակասեցնելու նպատակով ակտիվ գոտին կառուցվում է գլանի կամ գնդի ձևով և շրջապատվում նեյտրոնների անդրադարձիչով: Ըստ ակտիվ գոտու կառուցվածքի՝ տարբերում են հոմոգեն և հետերոգեն ռեակտորներ: Հոմոգեն ռեակտորում միջուկային վառելիքը և նեյտրոնների դանդաղեցուցիչը (ջուր, գրաֆիտ ևն) բաշխվում են համասեռ: Հետերոգեն ռեակտորում վառելիքը դասավորված է տարբեր երկրաչափական ձև ունեցող կտորների՝ ջերմաանջատիչ տարրերի ձևով և կարգավորված ցանց է կազմում: Նեյտրոնների դանդաղեցուցիչի պարունակությունից կախված՝ տրոհման ռեակցիայի հիմնական մասը կարող է ընթանալ արագ ($\mathcal{E}>10$ *կէվ*), միջանկյալ ($\mathcal{E}<10$ *կէվ*) և դանդաղ (ջերմային, $\mathcal{E}\sim 0,025$ *էվ*) նեյտրոններով: Համապատասխան Մ. ռ-ները կոչվում են արագ, միջանկյալ և ջերմային:

Միջուկային ռեակտորի սկզբունքային սխեման. *1.* ակտիվ գոտի, *2.* անդրադարձիչ, *3.* դանդաղեցուցիչ, *4.* ջերմաանջատիչ տարր, *5.* կարգավորման և վթարային պաշտպանության ձողեր, *6.* ջերմակրի ելքուղի

Տրոհման շղթայական ռեակցիայից ծնվում են մեծ էներգիայի (մինչև 10 *Մէվ*) նեյտրոններ: $^{235}U$ միջուկների տրոհումն ավելի արդյունավետ է ընթանում դանդաղ նեյտրոնների դեպքում: Այդ պատճառով ջերմային ռեակտորների ակտիվ գոտում դանդաղեցուցիչ նյութ է տեղաբաշխվում, որի միջուկների հետ առաձգական բախումներ կրելով՝ արագ նեյտրոնները դառնում են ջերմային: Արագ ռեակտորներում դանդաղեցուցիչը բացակայում է, և շղթայական ռեակցիան ընթանում է միայն խիստ հարստացված (մինչև 30% $^{235}U$) վառելիքում, սակայն ուղեկցվում է միջուկային վառելիքի արդյունավետ վերարտադրությամբ ($^{239}Pu$), որի շնորհիվ փոխհատուցվում են հարստացման ծախսերը: Այրման ժամանակ անջատված էներգիան ակտիվ գոտուց հեռացվում է ջերմակրի (He, $CO_2$, օդ, ջուր, հեղուկ մետաղներ ևն) օգնությամբ: Ջերմային Մ. ռ-ում ջերմակիրը մասնակիորեն նաև դանդաղեցուցիչի դեր է կատարում: Մ. ռ-ում շղթայական ռեակցիան կառավարվում է ակտիվ գոտում նեյտրոնների կլանումների թիվը փոփոխելու միջոցով: Այդ նպատակին են ծառայում նեյտրոնների լավ կլանիչ նյութեր (Cd, B) պարունակող հատուկ ձողերը, որոնք հեռակառավարման համակարգի օգնությամբ մտցվում կամ դուրս են քաշվում ակտիվ գոտուց: Մ. ռ-ի աշխատանքի ընթացքում տրոհվող նյութի քանակության նվազման, իզոտոպային բաղադրության փոփոխության և կլանման մեծ էֆեկտիվ կտրվածք ունեցող բեկոր միջուկների (Xe, Sm ևն) կուտակման (ռեակտորների թունավորում) հետևանքով Մ. ռ-ի ռեակտիվությունն ընկնում է, որը վերականգնվում է հատուկ կլանիչ ձողերի տեղաշարժմամբ: Մ. ռ. կառավարում է օպերատորը՝ էլեկտրոնային հաշվողական համակարգի օգնությամբ: Ռեակտորի վիճակի մասին անհրաժեշտ տեղեկությունները (նեյտրոնների հոսքի մեծությունը ակտիվ գոտու տարբեր կետերում, ջերմակրի ջերմաստիճանը ևն) տալիս է հեռաչափման համակարգը: Մ. ռ. իոնացնող ճառագայթման և նեյտրոնների հոսքի հզոր աղբյուր է, այդ պատճառով ակտիվ գոտին շրջապատվում է պաշտպանիչ հաստ շերտով (բետոն, պողպատ ևն):

Առաջին Մ. ռ. կառուցվել է ԱՄՆ-ում, 1942-ին, Է. *Ֆերմիի* ղեկավարությամբ: Սովետական առաջին ռեակտորը, որն առաջինն էր նաև Եվրոպայում, գործարկվել է Մոսկվայում, 1946-ին, Ի. Վ. *Կուրչատովի* ղեկավարությամբ: Հայկ. ատոմակայանի առաջին ռեակտորը շահագործման է հանձնըվել 1976-ին, որում դանդաղեցուցիչի և ջերմակրի դերը կատարում է ջուրը (ջրաջրային Մ. ռ.):

*Գրկ.* Вейнберг А., Вигнер Е., Физическая теория ядерных реакторов, пер. с англ., М., 1961.

*Ա. Հարությունյան, Գ. Հայյան*

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՌԵԱԿՑԻԱՆԵՐ**, ատոմային *միջուկների* փոխակերպումներ, երբ դրանք փոխազդում են տարրական մասնիկների, γ-քվանտների կամ միմյանց հետ: Z կարգաթիվ, A ատոմական զանգված ունեցող X միջուկի և a մասնիկի փոխազդեցության միջուկային ռեակցիան, որի հետևանքով առաջանում է b մասնիկ, և Z′ կարգաթվով, A′ ատոմական զանգվածով Y միջուկ, գրի է առնվում $a+{}_{Z}X^{A}\rightarrow{}_{Z'}Y^{A'}+b$ տեսքով կամ կրճատ՝ ${}_{Z}X^{A}(a, b)_{Z'}Y^{A'}$: Սովորաբար Մ. ռ-ում հետազոտության առարկա են ռեակցիաների դիֆերենցիալ և լրիվ կտրվածքները (տես *էֆեկտիվ լայնական կտրվածք*), ստացվող արգասիքների անկյունային և էներգետիկ բաշխումները և բևեռացումները: Մ. ռ. միջուկների կառուցվածքին վերաբերող տեղեկությունների հիմնական աղբյուրն են: Դրանք հնարավորություն են տալիս հետաքրքիր ինֆորմացիա ստանալ նաև տարրական մասնիկների մասին (օրինակ, նեյտրոնի վերաբերյալ տեղեկություն ստացվում է միայն Մ. ռ-ից): Մ. ռ. հիմնականում դասակարգվում են ըստ ռմբարկող մասնիկի (միջուկի) տեսակի: Տարբերում են ֆոտոնների (ֆոտոմիջուկային ռեակցիաներ), հադրոնների, լեպտոնների և իոնների ազդեցությամբ ընթացող ռեակցիաներ: Երբեմն Մ. ռ. դասակարգում են նաև ռմբարկող մասնիկի (միջուկի) էներգիայով: Մ. ռ-ի առաջին փորձերը կատարվել են ռադիոակտիվ աղբյուրներից ստացված ցածր էներգիայի α-մասնիկներով, նեյտրոններով և էլեկտրոններով: Հետագայում ուսումնասիրվել են տիեզերական ճառագայթներում ընթացող Մ. ռ.: Ներկայումս Մ. ռ-ի փորձերի ճնշող մեծամասնությունը

կատարվում է արագացուցիչներով: Ցածր և միջին էներգիաների լեպտոնների ու հադրոնների մասնակցությամբ տեղի ունեցող Մ. ռ. հնարավորություն են տալիս տեղեկություն ստանալ ոչ միայն միջուկի կառուցվածքի, այլև տարբեր փոխակերպումների մեխանիզմների մասին: Ցածր էներգիաների դեպքում Մ. ռ-ի մեջ գործնական ամենալայն կիրառությունն ստացել է դանդաղ նեյտրոնների փոխազդեցությունը ծանր միջուկների ($^{233}$U, $^{235}$U, $^{239}$Pu) հետ, քանի որ ջերմային նեյտրոնների ազդեցությամբ այդ միջուկների տրոհումը հանգեցնում է հսկայական քանակի էներգիայի անջատման՝ երևույթ, որ ընկած է *միջուկային էներգետիկայի* հիմքում: Ցածր էներգիայի պրոտոնների ազդեցությամբ կատարվող Մ. ռ. հաճախ օգտագործվում են ռադիոակտիվ իզոտոպներ ստանալու համար, որոնք կիրառվում են գիտության և տեխնիկայի տարբեր բնագավառներում: Միջուկի կառուցվածքն ուսումնասիրելու համար առավել նպատակահարմար են ֆոտոնների և էլեկտրոնների հարուցած Մ. ռ., քանի որ դրանք միջուկի հետ փոխազդում են լավ հայտնի էլեկտրամագնիսական փոխազդեցությամբ: Թույլ փոխազդեցության մեխանիզմի մասին լավ պատկերացում է տալիս μ-մեզոնների և նեյտրինոյի փոխազդեցությունը միջուկների հետ: Բարձր էներգիայի մասնիկների և միջուկների փոխազդեցության պրոցեսները, որոնք մեծ տեղ են գրավում միջուկային հետազոտությունների մեջ, արժեքավոր ինֆորմացիա են տալիս մասնիկների այնպիսի կարևոր բնութագրերի մասին, ինչպիսիք են նուկլոնների հետ անկայուն մասնիկների ու ռեզոնանսների փոխազդեցության լրիվ կտրվածքները, տարածաժամանակային նկարագիրը ևն: Տարրական մասնիկների ֆիզիկայում կարևոր նշանակություն ունի միջուկային թիրախների օգտագործումը: Ցածր էներգիայի իոնների ազդեցությամբ կատարվող Մ. ռ-ում համեմատաբար թեթև միջուկներից սինթեզվում են ավելի ծանրերը (ջերմամիջուկային սինթեզ, որն ուղեկցվում է հսկայական էներգիայի անջատմամբ), ինչպես նաև ստացվում են գերծանր տրանսուրանային տարրեր: Վերջին տարիներին Դուբնայում (ՍՍՀՄ) և Բերկլիում (ԱՄՆ) ստեղծվել են ծանր իոնների արագացուցիչներ, որոնցով հետազոտվում են միջուկ-միջուկային փոխազդեցությունները բարձր էներգիաների դեպքում (մի քանի Գէվ՝ յուրաքանչյուր նուկլոնին): Այսպիսի Մ. ռ-ից համեմատաբար ավելի հարուստ ինֆորմացիա է ստացվում, քան տարրական մասնիկների և միջուկների փոխազդեցություններից:

*Գրկ.* Лейн А., Томас Р., Теория ядерных реакций при низких энергиях, М., 1960; Мухин К. Н., Введение в ядерную физику, 2 изд., М., 1965.

*Վ. Վարդանյան, Ս. Գևորգյան*

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՌՈՒՄԲ**, միջուկային լիցքով ավիացիոն ռումբ. միջուկային ռազմամթերքի տեսակ: Նետվում է ինքնաթիռներից կամ թռչող այլ ապարատներից՝ տարբեր նպատակակետեր խոցելու համար: Տես նաև *Ատոմային ռումբ*:

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՍՊԵԿՏՐՈՍԿՈՊԻԱ**, *միջուկային ֆիզիկայի* բաժին, որն ուսումնասիրում է ատոմային *միջուկների* տարբեր վիճակները և դրանց միջև անցումները՝ նպատակ ունենալով տեղեկություններ ստանալ միջուկների ներքին կառուցվածքի, ռադիոակտիվ փոխակերպումների օրինաչափությունների և միջուկային ռեակցիաների մասին: Ատոմային միջուկը միմյանց հետ ուժեղ կապված պրոտոնների ու նեյտրոնների քվանտամեխանիկական համակարգ է, որը բնութագրվում է գրգռված վիճակների կամ մակարդակների ընդհատ սպեկտրով: Հետազոտելով միջուկի մի վիճակից մյուսին անցմանն ուղեկցող միջուկային ճառագայթումը, որը կապված է միջուկի էներգետիկ մակարդակների հետ, կարելի է տեղեկություններ ստանալ միջուկի կառուցվածքի վերաբերյալ: Այդ պատճառով միջուկային ճառագայթման հետազոտությունը Մ. ս-ի հիմնական մեթոդն է: Մակարդակների սպեկտրը և դրանց բնութագրական մեծությունները ուսումնասիրվում են α-, β-, γ-ճառագայթների գրանցման միջոցով: Միջուկն առաքելով α- և β- ճառագայթներ, անցնում է հարևան միջուկների ցածր մակարդակներին, իսկ γ-ճառագայթումն ու կոնվերսիոն էլեկտրոնների առաքումն ուղեկցում են գրգռված վիճակից նույն միջուկի անցմանը ավելի ցածր էներգետիկ մակարդակի: α-, β- և γ- ճառագայթների հետազոտման մեթոդները զգալիորեն տարբերվում են իրարից, ուստի Մ. ս. բաժանվում է α-, β-, γ- սպեկտրոսկոպիայի: Մ. ս-ի մեթոդների համար անհասանելի տեղեկությունները միջուկների գրգռված բարձր մակարդակների մասին ստացվում են միջուկային ռեակցիաներից: Դա պայմանավորված է նրանով, որ զգալիորեն մեծացել է ռեակցիաներից ստացվող մասնիկների էներգիայի ու կինեմատիկական պարամետրերի չափման ճշտությունը: Փորձարարական Մ. ս-ի մեթոդներով որոշվում են միջուկների կառուցվածքի հետ կապված հետևյալ բնութագրական մեծությունները. մակարդակների միջև անցումների էներգիան և ինտենսիվությունը, միջուկների գրգռված մակարդակների սպինները և զույգությունը՝ γ-ճառագայթման մուլտիպլետության չափման ու β-անցումների բնույթի որոշման միջոցով, այդ մակարդակների կյանքի տևողությունը:

Ժամանակակից Մ. ս-ի տեխ. միջոցների զինանոցը խիստ բազմազան է: Լայն գործածություն են գտել մագնիսական սպեկտրոմետրերը, *գամմա-սպեկտրոմետրը*, միջուկային ճառագայթման տարբեր դետեկտորները, կիսահաղորդչային դետեկտորը ևն: Մ. ս-ի մեթոդները կիրառվում են միջուկային բոլոր հետազոտություններում, ինչպես նաև կենսաբանության, բժշկության մեջ, քիմիայում, տեխնիկայի տարբեր բնագավառներում: Տես նաև *Գամմա-սպեկտրոսկոպիա*, *Նեյտրոնային սպեկտրոսկոպիա*:

*Գրկ.* Альфа-, бета- и гамма- спектроскопия, пер. с англ., М., 1969.

*Ա. Խուդավերդյան*

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՎԱՌԵԼԻՔ**, *միջուկային ռեակտորներում* տրոհման շղթայական ռեակցիան ապահովող նյութ: Միակ բնական Մ. վ. ուրանն է (տրոհվող $^{235}$U իզոտոպը կազմում է 0,71%): Գործնականում օգտագործվող հարստացված ուրանային վառելիքում $^{235}$U-ի պարունակությունը 2—4% է՝ ջերմային նեյտրոններով ռեակտորներում և մինչև 30%՝ արագ նեյտրոններով ռեակտորներում: Որպես Մ. վ. օգտագործվում են նաև բնության մեջ չհանդիպող $^{239}$Pu և $^{233}$U իզոտոպները (երկրորդային վառելիք), որոնք առաջանում են, երբ համապատասխանաբար $^{238}$U և $^{232}$Th հումքային միջուկները նեյտրոններ են կլանում: Բնական Մ. վ-ի պաշարների սահմանափակության առումով հեռանկարային է արագ նեյտրոններով ռեակտորների շահագործումը, որոնցում կուտակվող երկրորդային վառելիքի քանակությունը որոշակի պայմանների դեպքում գերազանցում է այրված Մ. վ-ի քանակությանը: Միջուկային ռեակտորներում Մ. վ. օգտագործվում է տարբեր քիմ. միացությունների ձևով և տեղավորվում է մետաղե հերմետիկ թաղանթների՝ ջերմաանջատիչ տարրերի մեջ: Մ. վ-ի միավոր զանգվածի տված ջերմությունը մի քանի միլիոն անգամ գերազանցում է նույն զանգվածով ածխից ստացված ջերմությանը և, բացի այդ, երկրորդային վառելիքի վերարտադրության պայմանի դեպքում Մ. վ-ի այրումից ստացված էներգիան ավելի էժան է, քան ածխի այրումից ստացվածը:

*Ա. Հարությունյան, Գ. Հաջյան*

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՏԵԽՆԻԿԱ**, 1. տեխնիկայի բնագավառ, որն օգտագործում է *միջուկային էներգիան*, 2. տեխնիկական միջոցների ու կազմակերպչական միջոցառումների համախումբ, կապված տրոհվող նյութերի միջուկային հատկությունների օգտագործման հետ: Մ. տ-ի հիմնական ուղղություններն են. ռեակտորաշինությունը, *միջուկային վառելիքի* արտադրությունը, *միջուկային ռեակտորների* համար ջերմարտադրող տարրերի պատրաստումը, աշխատած միջուկային վառելիքի վերամշակումը, ռադիոակտիվ *իզոտոպների* արտադրությունն ու կիրառումը, օրգանիզմը ճառագայթումից պաշտպանելու միջոցների ու մեթոդների մշակումը: Մ. տ-ի հետ սերտորեն կապված է միջուկային ռեակտորների համար կոնստրուկցիոն նյութերի (*գրաֆիտի*, *ծանր ջրի*, *բերիլիումի*, *ցիրկոնիումի* ևն) արդյունաբերական ստացումը, ռեակտորների և *միջուկային ուժային տեղակայանքների* ավտոմատ կարգավորման ու կառավարման հուսալի համակարգերի ստեղծումը, ռեակտորում անջատվող ջերմության հեռացման և օգտագործման ռացիոնալ համակարգերի մշակումը, միջուկային-ֆիզիկական ու ջերմային պրոցեսների հաշվարկների տեսության ու մեթոդների մշակումը և բազմաթիվ այլ գիտատեխնիկական պրոբլեմներ:

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՈՒԺԱՅԻՆ ՏԵՂԱԿԱՅԱՆՔ**, միջուկային էներգետիկական տեղակայանք, հիմնականում օգտագործվում է տրանսպորտային միջոցներում: Գլխավորապես կիրառվում է ատոմային նավատորմում: Մ. ու. տ. բաղկացած է *միջուկային ռեակտորից* (սար-

քավորումով) և շոգե- կամ գազատուրբինային տեղակայանքից, որոնց միջոցով ռեակտորում անջատվող ջերմային էներգիան փոխակերպվում է մեխանիկականի կամ էլեկտրականի: Մ. ու. տ-ներում լայն տարածում են ստացել ճնշումային *ջրաջրային ռեակտորները*: Նավերում և սուզանավերում Մ. ու. տ-ների օգտագործումը պայմանավորված է առանց թթվածնի աշխատելու հնարավորությամբ, որի շնորհիվ սուզանավերը կարող են ավելի երկար մնալ ջրի տակ: 1959-ին ՍՍՀՄ-ում կառուցվեց Մ. ու. տ-ով առաջին ոչ ռազմական նավը՝ «Լենին» ատոմային սառցահատը: Հետագայում կառուցվեցին ավելի հզոր սառցահատներ («Արկտիկա», «Սիբիր»): 60—70-ական թթ. արտասահմանում ստեղծվեցին Մ. ու. տ-ով սարքավորված ոչ ռազմական նշանակման տրանսպորտային փորձարարական նավեր («Սավաննա», «Մուցու» են):

ԱՄՆ-ում կատարվում են տիեզերական թռչող ապարատների համար Մ. ու. տ-ների ստեղծման աշխատանքներ (Nerva նախագիծ):

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՈՒԺԵՐ**, ատոմային *միջուկը* կազմող մասնիկների՝ պրոտոնների, նեյտրոնների միջև գործող ուժեր: Պատկանում են ուժեղ փոխազդեցությունների դասին և մի քանի կարգով գերազանցում բնության մեջ հայտնի մյուս ուժերը (էլեկտրամագնիսական, թույլ, գրավիտացիոն): Մ. ու. կարճազդող ուժեր են. դրանց ծագումը պայմանավորված է ուժեղ փոխազդող մասնիկների, օրինակ π-մեզոնների, փոխանակմամբ: Փոխազդող մասնիկների միջև հեռավորությունը մեծանալիս, Մ. ու. շատ արագ նվազում են՝ $V(r) = -\frac{V_0}{r}\exp(-r/r_0)$ (Յուկավայի պոտենցիալ, որտեղ $r_0 \approx 10^{-13}$ *սմ* և կոչվում է Մ. ու-ի գործողության շառավիղ): Մ. ու. ունեն հագենալու հատկություն, այսինքն՝ միջուկում նուկլոնները փոխազդում են միայն իրենց մոտ գտնվող նուկլոնների հետ: Դրա հետևանքով է, որ միջուկի խտությունը մոտավորապես հաստատուն է. հաստատուն է նաև մեկ նուկլոնին բաժին ընկնող միջին կապի էներգիան: Մ. ու. օժտված են լիցքային անկախությամբ (իզոտոպ ինվարիանտություն), այսինքն՝ նուկլոնների փոխազդեցության ուժը կախված չէ դրանց լիցքի մեծությունից: Մ. ու. կախված են փոխազդող մասնիկների սպինների ուղղությունից, ինչպես նաև այդ մասնիկները միացնող գծի նկատմամբ գումարային սպինի ուղղությունից (Մ. ու-ի տենզորային բնույթ): Մ. ու-ի մասին տեղեկություններ ստացվում են հիմնականում միջուկներից հադրոնների, լեպտոնների և ֆոտոնների ցրման փորձերից, ինչպես և *մեզոատոմների* ուսումնասիրությունից: Մ. ու-ի վերաբերյալ ավարտուն տեսություն գոյություն չունի: Կան Մ. ու-ի բնույթը այս կամ այն տեսակետից բացատրող մի քանի տասնյակ պոտենցիալներ:

Մ. ու-ի տեսության հիմնական խնդիրն է՝ գտնել այնպիսի պոտենցիալ, որի օգնությամբ կարելի կլինի միասնականորեն նկարագրել փորձնական տվյալների համախմբությունը:

*Գրկ.* Давыдов А. С., Теория атомного ядра, М., 1958; Бор О., Моттельсон Б. Р., Структура атомного ядра, пер. с англ., т. 1—2, М., 1971—77.

*Վ. Վարդանյան, Ս. Գևորգյան*

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՔԻՄԻԱ**, ժամանակակից գիտության մեջ նույնացվում է *ռադիոքիմիա* տերմինի հետ: Մ. ք-ին երբեմն վերագրում են նաև միջուկային ռեակցիաների հետևանքով ստացված նյութերի ուսումնասիրման և քիմ. հետազոտություններում միջուկային ֆիզիկայի եղանակների կիրառման հետ կապված մի շարք պրոբլեմներ: XX դ. 60-ական թվականներին Մ. ք-ի առարկա դարձավ նաև ատոմների ու մոլեկուլների էլեկտրոնային թաղանթների կառուցվածքի և ատոմների միջուկների կամ տարրական մասնիկների փոխարկումների կապի ուսումնասիրությունը:

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՖԻԶԻԿԱ**, ֆիզիկայի բաժին, որն ուսումնասիրում է ատոմային *միջուկների* կառուցվածքը, հատկությունները և փոխակերպումները: Մ. ֆ., իբրև ինքնուրույն ճյուղ, առանձնացել է *ատոմային ֆիզիկայից* XX դ. 40-ական թթ., իսկ մինչ այդ ֆիզիկայի այդ երկու բաժինները չէին սահմանազատված: Բնականաբար, նույնը կարելի է համարել այն նախադրյալները, որոնք պայմանավորել են ատոմային ֆիզիկայի, ապա նաև Մ. ֆ-ի ստեղծումն ու զարգացումը: Դրանցից հատկապես կարևոր էին բնական ռադիոակտիվության երևույթի հայտնաբերումը և ուսումնասիրումը (Ա. Բեքերել, Պ. Կյուրի և Մ. Սկլոդովսկայա-Կյուրի), ինչպես նաև Է. *Ռեզերֆորդի* նշանավոր փորձերը: Վերլուծելով բարակ թաղանթներից α-մասնիկների ցրման փորձերի արդյունքները, Ռեզերֆորդը ցույց տվեց, որ ատոմը նման է մոլորակային համակարգի, որի կենտրոնում գտնվում է միջուկը, իսկ դրա շուրջը պտտվում են էլեկտրոնները: Շարունակելով α-մասնիկների ցրման փորձերը, նա 1919-ին իրագործեց $\alpha + {}^{14}_{7}N \rightarrow {}^{17}_{8}O + {}^{1}_{1}H$ առաջին արհեստական *միջուկային ռեակցիան*, ապացուցելով, որ միջուկի բաղադրության մեջ մտնում են ջրածնի միջուկները, որոնք հետագայում կոչվեցին *պրոտոններ*: 1932-ին Ջ. Չադվիկը հայտնաբերեց *նեյտրոնը*: Նույն թվականին Վ. Հ. Համբարձումյանը, Դ. Դ. Իվանենկոն և Վ. Հայզենբերգն առաջ քաշեցին միջուկի նեյտրոն-պրոտոնային կառուցվածքի վարկածը, որը ներկայումս լրիվին հաստատված է: 1934-ին Ի. և Ֆ. Ժոլիո-Կյուրիները հայտնագործեցին արհեստական ռադիոակտիվությունը: 1938-ին գերմանացի ֆիզիկոսներ Օ. Հանը և Ֆ. Շտրասմանը հայտնաբերեցին դանդաղ նեյտրոնների ազդեցությամբ ուրանի միջուկների ճեղքման երևույթը, իսկ 1940-ին սովետական գիտնականներ Գ. Ն. Ֆլյորովը և Կ. Ա. Պետրժակը՝ նույն միջուկների ինքնակամ ճեղքումը: Պարզվեց, որ ճեղքման ժամանակ անջատվում է զգալի քանակությամբ *միջուկային էներգիա*, որի կորզման մեթոդները սկսեցին ինտենսիվորեն հետազոտվել: Այդ հետազոտությունները 1942-ի դեկտեմբերին պսակվեցին հաջողությամբ, երբ Է. Ֆերմիին և իր աշխատակիցներին հաջողվեց կառուցել առաջին *միջուկային ռեակտորը*, որում իրականացվեց ինքնապահպանվող միջուկային ռեակցիա: Չորս տարի անց, Ֆերմիի աշխատանքներից անկախ, ՍՍՀՄ-ում ևս լուծվեց այդ պրոբլեմը՝ Ի. Վ. Կուրչատովի և Ա. Ի. Ալիխանովի ղեկավարությամբ: Այդ աշխատանքներն ապացուցեցին միջուկային (ատոմային) էներգիայի գործնական կիրառման և արհեստական ճանապարհով քիմ. նոր տարրերի (մասնավորապես, մեծ քանակությամբ պլուտոնիումի) ստացման հնարավորությունը: Իրոք, հետագայում արհեստականորեն սինթեզվեցին *տրանսուրանային տարրերը*: Տեսական կանխատեսումների հիման վրա առանձնահատուկ ուշադրության հարց է 114 կարգաթիվ ունեցող տարրի և դրա հարևանների հայտնաբերումը տարրերի կայունության կղզու տիրույթում: Արդեն մշակված են արհեստական ճանապարհով այդ տարրերի ստացման մեթոդները. չի բացառված նաև դրանց հայտնաբերումը տիեզերական ճառագայթներում, աստղային նյութում, հանքային ջրերում ու երկրակեղևի հողաշերտում, և այդ նպատակով հատուկ հետազոտություններ են կատարվում:

Միջուկային էներգիայի օգտագործման հեռանկարները կապված են թեթև տարրերի սինթեզման ռեակցիաների հետ, որոնց ընթացքում զգալիորեն ավելի շատ էներգիա է անջատվում, քան ծանր միջուկների ճեղքման ժամանակ: Սակայն այդպիսի ռեակցիա մինչև այժմ հաջողվել է իրագործել միայն ակնթարթորեն՝ ջրածնային ռումբի պայթեցման պրոցեսում, մինչդեռ կարևորագույն և չլուծված խնդիր է այդ պրոցեսը կառավարելի դարձնելու հարցը:

Միջուկային ռեակցիաների արդյունքների վերլուծությունը ցույց է տվել, որ ռեակցիաների ընթացքի բնույթը կախված է միջուկային թիրախները ռմբակոծող α-մասնիկների էներգիայից, և քանի որ α-տրոհումներից ստացվող այդ մասնիկների էներգիան 10 *Մէվ*-ից չի անցնում, հետևաբար ֆիզիկոսները հարկադրված էին դրանց էներգիան արհեստականորեն մեծացնելու ուղիներ փնտրել: Ստեղծվեցին Կոկրոֆտ—Ուոլտոնի և Վան-դե-Գրաֆի առաջին արագացուցիչները: 1930-ին Է. Լոուրենսն ԱՄՆ-ում կառուցեց առաջին ցիկլոտրոնը: Արագացուցչային տեխնիկայի կատարելագործումը հանգեցրեց Սերպուխովի (ՍՍՀՄ), Չիկագոյի (ԱՄՆ) հզոր արագացուցիչների ստեղծմանը: 1943-ին տիեզերական ճառագայթների բաղադրության մեջ պրոտոնների հայտնաբերումը (Ա. Ի. Ալիխանով, Ա. Ի. Ալիխանյան և ուրիշներ) սկիզբ դրեց բարձր էներգիայի տիեզերական ճառագայթների և նյութի միջուկների փոխազդեցության պրոցեսների ուսումնասիրությանը: Այդ ուսումնասիրությունները հնարավորություն տվեցին ոչ միայն նոր տեղեկություններ ստանալ միջուկի կառուցվածքի ու հատկությունների վերաբերյալ, այլև հայտնաբերել նախկինում անհայտ մասնիկներ: Սկսվեց Մ. ֆ-ի կարևոր բաժիններից մեկի՝ *տարրական մասնիկների ֆիզիկայի* արագ զարգացումը: Մ. ֆ-ի բաղկացուցիչ մասն է կազմում նաև *նեյտրոնա-*

*յին ֆիզիկան*, որն զբաղվում է նյութի հետ դանդաղ նեյտրոնների փոխազդեցության պրոցեսների և նեյտրոնների ազդեցությամբ ընթացող միջուկային ռեակցիաների հետազոտությամբ:

Արագացուցիչներով և տիեզերական ճառագայթներով կատարվող հետազոտությունները հնարավորություն տվեցին ձեռնամուխ լինելու Մ. ֆ-ի կարևորագույն պրոբլեմներից մեկի՝ միջուկային փոխազդեցությունների մի շարք հատկությունների ուսումնասիրությանը, սակայն մինչև այժմ ստացված փաստերը բավական չեն միջուկային փոխազդեցությունների ընդհանուր տեսություն կառուցելու համար: Այդ պատճառով Մ. ֆ-ում օգտվում են միջուկի կառուցվածքի պարզագույն պատկերներից՝ *միջուկային մոդելներից*, որոնք թույլատրում են ստանալ պարզ մաթ. լուծումներ:

Մ. ֆ-ի զարգացմանը զուգընթաց, նրա առանձին ճյուղերը փաստորեն վերածվել են ինքնուրույն գիտությունների, ինչպիսիք են, օրինակ, *միջուկային էներգետիկան*, պլազմայի ֆիզիկան, արագացուցիչների ֆիզիկան, տիեզերական ճառագայթների ֆիզիկան ևն: Հսկայական է Մ. ֆ-ի կիրառական նշանակությունը արդի հասարակության կյանքի բոլոր ոլորտներում: Միաժամանակ դա այն հիմնարար գիտությունն է, որի առաջընթացի շնորհիվ հնարավոր կդառնա բացահայտել մատերիայի կառուցվածքի անծանոթ հատկությունները և հայտնագործել բնության նոր, ընդհանուր օրենքներ:

*Գրկ.* Мухин К. Н., Введение в ядерную физику, 2 изд., М., 1965. Տես նաև *Միջուկ ատոմի* հոդվածի գրականությունը:

*Ա. Խուդավերդյան*

**ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ՖՈՏՈԷՖԵԿՏ**, տես *Ֆոտոմիջուկային ռեակցիաներ*:

**ՄԻՋՈՒԿԻ ՃԵՂՔՈՒՄ**, *միջուկի* տրոհումը երկու կամ ավելի մասերի՝ «բեկոր» միջուկների: Հայտնաբերել են գերմ. գիտնականներ Օ. Հանը և Ֆ. Շտրասմանը, առաջին որակական բացատրությունը տվել են ավստրիացի ֆիզիկոսներ Լ. Մայտները և Օ. Ֆրիշը: Ծանր տարրերի միջուկների ճեղքումը տեղի է ունենում ինքնաբերաբար (ինքնակամ ճեղքում) կամ այդ միջուկները տարրական մասնիկներով՝ նեյտրոններով, պրոտոններով, γ-քվանտներով ռմբակոծելիս (հարկադրական ճեղքում): Տրոհման պրոցեսն ուղեկցվում է երկրորդային նեյտրոնների կամ γ-ճառագայթների առաքումով, ինչպես նաև մեծ քանակությամբ էներգիայի անջատմամբ: Ճեղքման նկատմամբ ծանր միջուկների էներգետիկ անկայունության պատճառն այն է, որ դրանց մեկ նուկլոնին բաժին ընկնող տեսակարար *կապի էներգիան* ավելի փոքր է, քան միջին միջուկներինը: Մ. ճ-ման ժամանակ երկրորդային նեյտրոնների առաջացումը հանգեցնում է տրոհման ինքնապահպանվող պրոցեսի, որը կոչվում է միջուկային շղթայական ռեակցիա: Այդպիսի պրոցեսների ընթացքում մեծ քանակության էներգիա է անջատվում: Դրանով էլ պայմանավորված է միջուկային շղթայական ռեակցիաների գործնական կիրառությունը որպես միջուկային էներգիայի աղբյուր: Միջուկի ինքնակամ ճեղքումը բնութագրվում է կիսատրոհման պարբերությամբ: $^{238}$U-ի համար այն հավասար է $8 \cdot 10^{15}$ տարվա, իսկ տրանսուրանային միջուկների համար՝ մի քանի *ժ*-ի:

*Գրկ.* Лихман Р. Б., Деление ядра, в кн.: Физика атомного ядра и плазмы, пер. с англ., М., 1974.

*Վ. Վարդանյան, Ս. Գևորգյան*

**ՄԻՋՈՒԿԻ ՄԱԳՆԻՍԱԿԱՆ ՄՈՄԵՆՏ**, տես *Միջուկային մոմենտներ*:

**ՄԻՋՈՒԿՆԵՐԻ ՔԻՄԻԱԿԱՆ ԲԵՎԵՌԱՑՈՒՄ**, հաստատուն մագնիսական դաշտում ռադիկալային քիմիական ռեակցիաների վերջնանյութերի մոլեկուլներում միջուկային զեեմանյան մակարդակների անհավասարակշռված բնակեցվածության երևույթ (տես *Զեեմանի երևույթ*): Մ. ք. բ. դիտվում է *միջուկային մագնիսական ռեզոնանսի* մեթոդով՝ սպեկտրներում արտահայտվում է որպես անոմալ մեծ կլանում (դրական Մ. ք. բ.) կամ ռադիոճառագայթում (բացասական Մ. ք. բ.): Մ. ք. բ. առաջանում է ռադիկալային զույգերում, որոնցից ստացվող վերջնանյութերի գոյացման հավանականությունը կախված է ռադիկալների միջուկների սպինների փոխադարձ դիրքորոշումից: Մ. ք. բ. օգտագործվում է քիմ. ռեակցիաների փուլերը որոշելու համար: Մ. ք. բ-ման հիման վրա զարգանում են մագնիսական իզոտոպների հարստացման և ռադիկալային ռեակցիաների վրա մագնիսական դաշտի ազդեցության ուսումնասիրման ուղղությունները:

*Ճ. Մարգարյան*

**ՄԻՋՕՐԵԱԿԱՆ** աշխարհագրական, Երկրի մակերևույթի և Երկրի պտտման առանցքով ու մակերևույթի որևէ կետով տարած հարթության հատման գիծ: Սկզբնական է համարվում այն Մ., որից կատարվում է աշխարհագրական երկայնության հաշվարկը: Միջազգային պրակտիկայում սկզբնական Մ. է ընդունված *Գրինվիչի միջօրեականը*:

**ՄԻՋՕՐԵԱԿԱՆ ՄԱԳՆԻՍԱԿԱՆ** Երկրի, երկրամագնիսական դաշտի ուժագծի պրոյեկցիան Երկրի մակերևույթի վրա: Մագնիսական բոլոր միջօրեականները, որոնք բարդ կորեր են, հատվում են Երկրի հս. և հվ. մագնիսական բևեռներում: Մագնիսական միջօրեականի հարթություն է կոչվում այն ուղղաձիգ հարթությունը, որն անցնում է դիտորդով (սարքով) և պարունակում երկրամագնիսական դաշտի լարվածության վեկտորն այդ կետում: Միջօրեականի հարթության (այդտեղ տեղադրվում է մագնիսական կողմնացույցի սլաքը) և աշխարհագրական միջօրեականի հարթության կազմած անկյունը Երկրի մակերևույթի տվյալ կետում կոչվում է մագնիսական հակում: Երկրի մագնիսական միջօրեականի հետ մեկտեղ հաճախ դիտարկում են երկրամագնիսական միջօրեականը՝ Երկրի մակերևույթի դիտարկվող կետով և հս. ու հվ. երկրամագնիսական բևեռները միացնող ուղիղ գծով տարված հարթության և Երկրի մակերևույթի հատման գիծը: Ի տարբերություն մագնիսական միջօրեականի, որը նկարագրում է Երկրի իրական մագնիսական դաշտը, երկրամագնիսական միջօրեականները նկարագրում են դրա առաջին մոտավորությունը՝ համասեռ մագնիսացած երկրագնդի դաշտը: Տես նաև *Երկրի մագնիսականություն*:

**ՄԻՋՕՐԵԱԿԱՆ ՇՐՋԱՆ**, աստղագիտական գործիք՝ երկնային լուսատուների հասարակածային կոորդինատների և ժամանակի որոշման համար: Ստեղծել է դանիացի աստղագետ Օ. Ռյոմերը [O. Romer (1644—1710)], XVII դ. վերջին: Ժամանակակից Մ. շ. կազմված է աստղադիտակից, որը պտտվում է միջօրեականի հարթությունում՝ արևելք-արևմուտք ուղղված հորիզոնական առանցքի շուրջը (նկ.): Առանցքի վրա կա նաև բաժանումներով երկու շրջան, որոնց ցուցմունքը որոշվում է *միկրոմետրի* օգնությամբ: Ինքնագիր սարքերը գրանցում են լուսատուի միջօրեականով անցնելու պահը (աստղային ժամանակ): Ուղղակի ծագումը որոշվում է, երբ լուսատուն հատում է օկուլյարի ուղղաձիգ գիծը (հորիզոնական շրջանի ցուցմունքով), իսկ հակումը որոշվում է՝ այդ պահին օկուլյարի հորիզոնական գիծն ուղղելով դեպի լուսատուն (ուղղաձիգ շրջանի ցուցմունքով):

Միջօրեական շրջան

**ՄԻՋՕՐԵԻ ԳԻԾ**, տես *Երկնոլորտ*:

**ՄԻՌՆԻ**, գիտական դիտակայան (1956—1972) և սովետական անտարկտիկական արշավախմբի գլխավոր նյութատեխնիկական բազան մինչև 1971-ը: Գտնվում է Դեյվիսի ծովի Պրավդա ափին, հվ. լայնության 66°33′ և արլ. երկայնության 93°01′-ի միջև, մայրցամաքային սառույցի և ծովի մակարդակից 35 *մ* բարձրության ժայռի վրա: Հիմնադրվել է Միջազգային երկրաֆիզիկական տարվա կապակցությամբ: Մ-ում կառուցվել են 20 հիմնական շենք, մագնիսական, սեյսմիկ և օդաբանական հատուկ տաղավարներ, երկրաֆիզիկական, երկրաբանական, սառցադաշտաբանական, աերոֆոտոգրաչափական, օդաբանական, ծանրաչափական և այլ լաբորատորիաներ, Մոսկվայի հետ ուղիղ կապ ունեցող ռադիոկայան: Դիտակայանը «Մ.» է կոչվել ռուս. «Միռնի» եռակայմ առագաստանավի անունով:

**ՄԻՌՆԻ**, ավան ՌՍՖՍՀ Կրասնոդարի երկրամասի Ապշերոնսկի շրջանում, շրջկենտրոնից 85 *կմ* հյուսիս-արևմուտք: Բնակչությունը՝ հայեր, ռուսներ, ադրբեջաններ: Զբաղվում են անտառամշակությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ-կինո, գրադարան: Մ. հիմնադրվել է 1950-ին:

**ՄԻՍ**, կարևորագույն սննդամթերք: Արդյունաբերության մեջ Մ. են կոչվում մոր-

թած կենդանու մարմնի բոլոր մասերը (մսեղիքը), բացառությամբ մաշկի, գլխի, վերջավորությունների ծայրանդամների ու ներքին օրգանների: Բացի մկանունքից Մ-ի կազմության մեջ մտնում են շարակցական, ճարպային, ինչպես նաև աննշան քանակով նյարդային հյուսվածքներ: Մ-ի արժեքավոր և քանակապես գերակշռող մասը (50—65%) մկանային հյուսվածքն է: Մորթած ոչ գեր կենդանիների մկանային հյուսվածքների քիմ. կազմն է (%-ներով). ջուր՝ 73—77, սպիտակուցներ՝ 18—21, ճարպեր՝ 1—3, ազոտային էքստրակտային նյութեր՝ 1,7—2, ոչ ազոտային էքստրակտային նյութեր՝ 0,9—1,2, հանքային նյութեր՝ 0,8—1,0: Մկանային հյուսվածքի հիմնական կառուցվածքային տարրը մկանաթելիկն է, որն արտաքինից պատված է առաձգական թաղանթով՝ սարկոլեմայով: Սննդի համար կարևոր է ճարպային հյուսվածքը (15—30%), որը շարակցական հյուսվածքի տարատեսակ է: Մ-ի կալորիականությունը պայմանավորված է ճարպերի պարունակությամբ: Ճարպերի ընդհանուր քանակը մսեղիքի մեջ կախված է կենդանու տեսակից, հասակից ու սնվածության աստիճանից: Տարբեր կենդանիների ճարպի գույնը, հոտը, կոնսիստենցիան, հալման ու պնդացման աստիճանները տարբեր են: Ոսկրային հյուսվածքը (5—32%) նույնպես շարակցական հյուսվածքի տարատեսակն է և կարևոր է սննդի համար: Ոսկրերի սննդային արժեքը կախված է սպունգանյութի քանակից (դրանով հարուստ են սպունգավոր ոսկրերը): Ոսկրային հյուսվածքի չոր նյութը պարունակում է 26—52% օրգ. և 48—74% հանքային նյութեր:

Ի տարբերություն բուսական ծագման սպիտակուցների, Մ-ինը լրիվ յուրացվում է մարդու կողմից: Դրանք մեծ մասամբ գտնվում են մկանային հյուսվածքում և մտնում են սարկոպլազմայի (միոգենային խմբի սպիտակուցներ, գլոբուլին, միոալբումին, միոգլոբին), մկանաթելերի (ակտին, միոզին, տրոպոմիոզին) և բջջակորիզի (նուկլեոպրոտեիդներ) բաղադրության մեջ, ինչպես նաև սարկոլեմայի, փխրուն շարակցական հյուսվածքի և մկանաթելերը պատող շարակցահյուսվածքային գոյացությունների մեջ: Մկանների սպիտակուցների գրեթե կեսը միոզինը (40%) և ակտինն (10—15%) են: Միոգենային խմբի սպիտակուցները 20% են:

Կենդանու սպանդից հետո որոշակի ջերմային պայմաններում (0—4°) և մոտ 72 *ժ* պահելիս Մ-ի համային հատկությունները փոխվում են, այն դառնում է բուրավետ, փափուկ և հյութալի: Այս պրոցեսը կոչվում է հ ա ս ու ն ա ց ու մ, որը տեղի է ունենում սեփական ֆերմենտների ազդեցությամբ: Հասունացման ժամանակ որոշակի փոփոխություններ են տեղի ունենում նաև սպիտակուցների մեջ, որը պայմանավորված է ադենոզինեռֆոսֆորաթթվի (ԱԵՖ) քանակական փոփոխությամբ: Առաջացած թթուները արգելակում են նեխային միկրոֆլորայի գործունեությունը, փխրունացնում մկանաթելիկների թաղանթը: Ըստ կենդանու տեսակի տարբերում են ոչխարի, այծի, խոզի, ուղտի, գոմեշի, եղջերվի, ձիու, ճագարի և թռչունի մսեղիքներ: Ըստ կենդանու հասակի Մ. լինում է՝ ա. կաթնակեր կենդանիների, բ. մատղաշ կենդանիների, գ. հասակավոր կենդանիների: Տարբերում են Մ-ի ոսկրոտ, ոսկրազատված և ջլազատված տեսակները: Ըստ բտվածության տավարի, ոչխարի և այծի մսեղիքը լինում է 2 (I և II), սեռահասուն խոզերինը՝ 3 (ճարպոտ, բեկոնացու և մսացու), գյուղատնտ. թռչուններինը (ըստ բտվածության, տեխնոլոգիական մշակման ու որակի)՝ 2 կարգի: Տես նաև *Մսի արդյունաբերություն*:

*Վ. Այրումյան*

**ՄԻՍ ՎԱՆ ԴԵՐ ՌՈԵ** (Mies van der Rohe) Լյուդվիգ (27.3.1886, Ախեն, այժմ՝ ԳՖՀ— 17.8.1969, Չիկագո, ԱՄՆ), գերմանացի ճարտարապետ, դիզայներ, *ֆունկցիոնալիզմի* առաջատար ներկայացուցիչներից: Մասնագիտական կրթություն չի ստացել: Բեռլինում *Լը Կորբյուզիեի* և *Վ. Գրոպիուսի* հետ աշխատել է (1908—12) Պ. Բերենսի արվեստանոցում: 1926—32-ին եղել է «Դոյչեր Վերկբունդի» փոխնախագահ, 1930—33-ին՝ *«Բաուհաուզի»* տնօրեն: Գերմանիայի Նոյեմբերյան հեղափոխության անվ.՝ «Նովեմբեր գրուպպե» արվեստագետների միության անդամ էր: Նրա նախագծերով կառուցվել են Կ. Լիբկնեխտին


Լ. Միս վան դեր Ռոե

և Ռ. Լյուքսեմբուրգին նվիրված հուշարձանը Բեռլինում (1926, չի պահպանվել), Բարսելոնի գերմ. տաղավարը (1929),

Լ. Մ ի ս վ ա ն դ ե ր Ռ ո ե. *1.* հուշարձան Կ. Լիբկնեխտին և Ռ. Լյուքսեմբուրգին Բեռլինում (1926), չի պահպանվել, *2.* ֆառնսուորթ մենատունը Չիկագոյի մոտ (1950), *3.* Քրաունհոլլը (Իլինոյսի տեխնոլոգիական ինստ-ի մասնաշենք) Չիկագոյում (1955), *4.* բնակելի տներ Լեյք Շոր Դրայվում (Չիկագո, 1951), *5.* «Սիգրամ բիլդինգ»-ը Նյու Յորքում (1958)















Թուգենդհատ մենատունը Բռնոյում (1930): Մ. վ. դ. Ռ. 1937-ին գաղթել է ԱՄՆ, 1938-ին նշանակվել Իլինոյսի տեխնոլոգիական ինստ-ի տնօրեն (մինչև 1958-ը): Նրա նախագծերով ԱՄՆ-ում կառուցվել են՝ Իլինոյսի տեխնոլոգիական ինստ-ի համալիրը (1942—58), Լեյք Շոր Դրայվի աշտարակաձև երկու բնակելի շենքերը (1951, Չիկագո), «Սիգրամ բիլդինգը» (1958, Նյու Յորք), XX դ. արվեստի ցուցասրահը (1962—68) Բեռլինում: 1959-ին պարգևատրվել է Բրիտանական ճարտ. թագավորական ինստ-ի ոսկե մեդալով: 1950—60-ական թթ. Մ. վ. դ. Ռ. մեծ ազդեցություն է ունեցել ԱՄՆ-ի, Արևմտյան Եվրոպայի և Ճապոնիայի ճարտ-ների գործունեության վրա:

*Գրկ.* Զարյան Ա., Արևմտյան Եվրոպայի արդի ճարտարապետությունը, Ե., 1979: Иконников А. В., Архитектура США, М., 1979; Hilberseimer L., Mies van der Rohe, Chicago, 1956. *Ա. Զարյան*

**ՄԻՍ ՎԻԴՆԻ**, հայաբնակ գյուղ ՌՍՖՍՀ Կրասնոդարի երկրամասի Սոչիի Ադլերի շրջանում, շրջկենտրոնից 4 *կմ* հարավ: Սովետական տնտեսությունն զբաղվում է բանջարաբուծությամբ, այգեգործությամբ: Մ. հիմնադրվել է 1911-ին· Հայերը եկել են շրջակա գյուղերից, 1947-ին:

**ՄԻՍԱՔՅԱՆ-ՔԵՍԻՄՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ**, հիմնվել է 1847-ին, Բուխարեստում, Վարդերես Միսաքյանի նվիրատվությամբ, Միսաքյան ազգային վարժարան անունով: Նախակրթարան էր (4 դասարան) մանկապարտեզի բաժնով: Մայրենի լեզվից բացի դասավանդվում էին ռուս., ֆրանս., հետագայում նաև՝ գերմ.: Մի քանի անգամ փակվել և վերաբացվել է: 1920-ական թթ. բացվել են 5—8-րդ դասարաններ: 1926-ին ռումինահայ Մարիամ Քեսիմի նվիրատվությամբ կառուցվել է երկհարկանի նոր շենք, և վարժարանը կոչվել է Միսաքյան-Քեսիմյան: 1932-ին աշակերտների թիվը հասել է 405-ի: 1939-ին դպրոցի համար կառուցվել է նոր մասնաշենք, բացվել է գիշերօթիկ բաժին, Սովետական Հայաստան կատարված ներգաղթից (1946—48) հետո աշակերտների թիվը նվազել է (85): Մ-Ք. ա. վ. սկզբում պահվում էր հանգանակություններից ստացված եկամուտներով, Ռումինիայում ժողովրդա-դեմոկրատական կարգեր հաստատվելուց հետո՝ պետ. միջոցներով: Փակվել է 1965-ին: Տնօրեններ են եղել Վ. Փափազյանը, Վ. Մեշտուճյանը, Ա. Տիրացյանը, Օ. Պերպերյանը, Վ. Գարակյոզյանը, Օ. Վարդանյանը, Ե. Տիրատուրյանը, ուսուցիչներ՝ Հ. Սիրունին, Ե. Արծրունին, Ս. Գանթարճյանը, Մ. Պոտուրյանը, Լևոն Կարապետ Պալճյանը (նույն դպրոցի շրջանավարտ, հետագայում՝ Ամենայն Հայոց կաթողիկոս Վազգեն Ա), Զ. Պլպուլը, Կ. և Ս. Գանթարճյանները, Ն. Պալյանը:

*Մ. Քոլանջյան*

**ՄԻՍԻՈՆԵՐՈՒԹՅՈՒՆ** (< լատ. missio — առաքում, հանձնարարություն), կրոնական կազմակերպությունների և եկեղեցիների գործունեության տարատեսակ: Հանդես գալով տնտեսապես թույլ զարգացած և գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդներին «լուսավորելու», «աստծո խոսքը» տարածելու կոչով, իրականում նպաստում է որոշակի պետությունների ու սոցիալական խմբերի քաղ. նպատակների իրագործմանը: Մ-յան պարզագույն դրսևորումները երևան են եկել դեռևս մ. թ. ա. III դ. բուդդայական և մ. թ. IV դ. քրիստոնեական կրոններում: XV—XVI դդ. Պորտուգալիայի և Իսպանիայի գաղութային քաղաքականությանը համընթաց, կաթոլիկական Մ. տարածվում է Արևելքի երկրներում, Անդրկովկասում: XIV—XVI դդ. Մեծ Բրիտանիայի և Հոլանդիայի գաղութային քաղաքականության ուժեղացումը հող է նախապատրաստում բողոքական Մ-յան տարածման ու զարգացման համար: XIX դ. սկզբին միսիոներական կազմակերպություններ ստեղծվեցին նաև ԱՄՆ-ում: Մ. Ռուսաստանում սկզբնավորվել է XIV դ., խիստ ուժեղացել է XVI—XIX դդ., երբ ցարական կառավարությունն իրագործում էր իր գաղութային քաղաքականությունը Պովոլժիեում, Սիբիրում, Կովկասում: Մ. կաթոլիկական ու բողոքական դրսևորումներով տարածվում է Կիլիկյան և Մայր Հայաստանում· Կիլիկիահայ բարձրաստիճան եկեղեցականների, խոշոր ֆեոդալների, մեծատուն վաճառականների մի մասը, ընդառաջելով կաթոլիկ եկեղեցուն, Արևելք ուղարկած միսիոներների քարոզչությանը, հույս ունեին դավանական զիջումներով մերձեցնել հայ և կաթոլիկ եկեղեցիները: Դրան հակառակ, հայ բնաշխարհի աշխարհիկ և հոգևոր տերերը, Սյունիքի հոգևորականների գլխավորությամբ, անհնարին համարելով Եվրոպայից օգնություն ստանալը, դեմ էին Հռոմի հետ մերձեցման: Մերձավոր Արևելքում մինչև 1318-ը կաթոլիկ քարոզչություն են ծավալել ֆրանցիսկյան միաբանության անդամները, որոնք կարողացել են լատինադավան համայնքներ ստեղծել Հայաստանի առևտրա- արհեստագործական կենտրոններում, Իրանի, Կովկասի հայաշատ քաղաքներում: 1318-ից հետո Հայաստանում լայն գործունեություն են ծավալել դոմինիկյան միաբանության միսիոներները: Հռոմի պապի հատուկ կոնդակով հիմնվել է նոր արքեպիսկոպոսություն՝ դոմինիկյանների գլխավորությամբ, Սուլթանիե (Ատրպատականում) կենտրոնով: Այն ընդգրկում էր Արևելյան Հայաստանը, Իրանը, Միջին Ասիան, Հնդկաստանը, Եթովպիան: Դոմինիկյան միսիոներները մեծ ազդեցություն ձեռք բերեցին Նախիջևանի գավառում, ուր կաթոլիկ դավանանք ընդունեց Երնջակի գավառի Քռնա, Ապարաներ, Սալիթաղ, Ապրակունիս, Խոշկաշեն և Ջահուկի շրջանի Ջահուկ ու Շահապոնս գյուղերի հայ բնակչության մեծ մասը: Վասպուրականի Արտազ գավառի հոգևոր և աշխարհիկ տերերը նպաստել են կաթոլիկ միսիոներներին, ճանաչել Սսի (1307) և Ադանայի (1317) ժողովների լատինամետ որոշումները: Դոմինիկյան միսիոներները պայքար ծավալեցին հայոց եկեղեցու դեմ, և Հայաստանում սկսվեց դավանաբանական լարված պայքարի մի ժամանակաշրջան: Սյունյաց հոգևորականները, ազատները, հատկապես Գլաձորի համալսարանի շուրջը համախմբված ուսուցչապետներն ու վարդապետները եռանդուն պայքար ծավալեցին լատինադավանության դեմ՝ ամեն կերպ ջանալով պահպանել հայոց դավանանքը: Սովորաբար կաթոլիկ միսիոներներն աչքի էին ընկնում խորամանկությամբ ու ճարպկությամբ: Կաթոլիկ դոմինիկյան Պողոս Պիրոմալին Ոսկան Երևանցու մոտ սովորում է հայերեն և մեծ վստահություն ձեռք բերում լուսավորչական հայերի շրջանում: Կղեմես Գալանոսը ակտիվորեն մասնակցելով լեհահայերի դավանափոխությանը, Կ. Պոլսի հայերի շրջանում ենթարկվում է հալածանքի և վերադառնում Հռոմ: Մշո հոգևոր առաջնորդ Ներսես եպիսկոպոսը պապից ստանում է որոշակի գումար՝ քարոզչական նկատառումներով: 1883-ին Մուշում հիմնադրվում է «Հայ-հռոմեական բարձրագույն ուսումնարան»-ը: Կաթոլիկության տարածմանը նպաստում էին Վենետիկի *Մխիթարյան միաբանությունը*, մասնավորապես՝ Հասունյանները, որոնք ձգտում էին միաբանության դպրոցները կենտրոնացնել Հռոմում: 1650-ից Հայաստանում գործել են *ճիզվիտները*: Լյուդովիկոս XIV իր միսիոներների (Ռոշ, Հ. Լոնժոն, Մ. Ֆերվրին ևն) միջոցով, հայերին հրապուրելով ազատագրության խոստումներով, ջանում էր դավանափոխել նրանց և օգտագործել իբրև հենարան՝ իր դիրքերն Արևելքի երկրներում ամրապնդելու համար:

Մ. բողոքականության ձևով հայ իրականության մեջ տարածելու առաջին փորձերը կապվում են «Բազելյան ընկերության» քարոզիչներ, փիլիսոփայության դոկտոր Ֆ. Զարեմբայի և Ա. Դիտրիխի հետ: Ժողովուրդը, աստիճանաբար հասկանալով Մ-յան իսկական նպատակները, հեռու է կանգնում նրանցից: 1837-ին ցարական կառավարությունն արգելում է շվեյցարացի միսիոներների գործունեությունը Կովկասում, Ռուսաստանի սահմաններում:

Այնուհետև հայաբնակ շրջաններում սկսեցին գործել ամերիկյան, անգլ. միսիոներները: Մ-յան տարածման ամենաազդեցիկ միջոցներից էր դպրոցը: Արևմտյան միսիայի հիմնական կենտրոն Կ. Պոլսի հայաշատ թաղերում ամերիկյան միսիոներները, սկսած 1830-ական թթ., հիմնեցին առաջին դպրոցները: Այնթապ, Մարաշ, Ուրֆա, Հալեպ և այլ քաղաքներում ևս գործում էին ամերիկյան միսիոներական դպրոցներ:

Մ. հարատևում է ժամանակակից գաղութային ու կիսագաղութային երկրներում և հանդես է գալիս որպես նեոգաղութատիրական քաղաքականության իրագործող: Կաթոլիկ միսիոներական գործունեությունն այժմ գլխավորում է Վատիկանը: Ազգային-ազատագրական շարժումների ուժեղացման համեմատ եկեղեցին փոխում է մեթոդները՝ քրիստոնեական պաշտամունքի մեջ ներառնում տեղական պաշտամունքային ծեսեր, ժամասացությունները կատարվում են տեղական լեզուներով, գաղութային ու կիսագաղութային երկրների ժողովուրդներին մոլորեցնելու, նրանց միասնական պայքարը ջլատելու համար հանդես է գալիս ընդդեմ ռասայականության:

*Գրկ.* Ղ ու կ ա ս յ ա ն Հ., Բողոքականությունը Կովկասու Հայոց մեջ, Թիֆլիս, 1886: Ա լ պ ո յ ա ճ յ ա ն Ա., Պատմություն հայ դպրոցի, հ. 1., Կահիրե, 1946: Ճ ի զ մ ե ճ յ ա ն Մ., Խարբերդ և իր զավակները, Ֆրեզնո, 1955: Ն ա զ ի կ յ ա ն Գ., Արևմտահայ մանկավարժական միտքն ու դպրոցը, Ե., 1969: Խ ա չ ի կ յ ա ն Լ. Ս., Արտազի Հայկական իշխանությունը և Ծործորի դպրոցը, «ԲՄ», № 11, 1973: *Ա. Իգնատյան*

**ՄԻՍԻՐ**, հայ ազնվականական գերդաստան Լեհաստանում և Ռումինիայում: Գաղթել են Անիից: Լեհաստանում հիշատակվում են XV դարից, Ռումինիայում՝ XVII դարից: Ունեցել են իշխանական տիտղոս և կալվածքներ, էական դեր խաղացել այդ երկրների քաղ. և հասարակական կյանքում: Տոհմի նշանավոր գործիչներից են. Ռումինիայի գյուղատնտեսության, առևտրի, արդյունաբերության և կալվածների մինիստր (1901—02), տնտեսագիտական բազմաթիվ երկերի հեղինակ՝ Բազիլ (Բասիլ) Մ., իրավաբան, Ռումինիայի ծերակույտի (սենատ) նախագահի տեղակալ, ակադեմիայի անդամ՝ Պետրե Թ. (1856—1929), Բոտոշանի քաղաքապետ (1931—32), ռում. բազմաթիվ գրական մրցանակների արժանացած «Մեռած աղջիկը» (1937) գեղարվեստական երկի հեղինակ՝ Յոան Բոգդանին (1890—1944), «Ջորջե Էնեսկու» (1964) երաժշտագիտական արժեքավոր ուսումնասիրության հեղինակ՝ Նիկոլայեն (1896—1965) և ուրիշներ: *Մ. Քոլանջյան*

**«ՄԻՍԼ»** («Мысль» — «Միտք»), ՍՍՀՄ Հրատպետկոմի սոցիալ-տնտ. գրականության հրատարակչություն (Մոսկվա): Հիմնվել է 1930-ին Պետհրատի սոցիալ-տնտեսական բաժնի հիմքի վրա՝ Սոցէկգիզ (Սոցտնտհրատ) անվամբ: 1941-ին միացվել է Գոսպոլիտիզդատին, 1957-ին նորից առանձնացվել՝ որպես ինքնուրույն հրատարակչություն: 1963-ին Սոցէկգիզին են միացվել ՍՄԿԿ Կենտկոմին կից բարձրագույն կուսակցական դպրոցի, Հասարակական գիտությունների ակադեմիայի ու աշխարհագրական գրականության հրատարակչությունները և կոչվել «Մ.»: Ունի 3 մասնագիտացված գլխավոր խմբագրություն, սոցիալ-տնտ. գրականության, ուսումնամեթոդական գրականության (կուսակցական բարձրագույն ուսումնական հաստատությունների համար) և աշխարհագրական գրականության:

**ՄԻՍԼԲԵԿ** (Myslbek) Յոսեֆ Վացլավ (1848—1922), չեխ քանդակագործ: Սովորել է Պրագայի գեղարվեստի ակադեմիայում: Պրագայի Դեկորատիվ արվեստի ուսումնարանի (1885—96) և Գեղարվեստի ակադեմիայի (1896—1919) պրոֆեսոր: Ստեղծել է Չեխիայի պատմական գործիչների և ազգային էպոսի հերոսների վեհ, մոնումենտալ կերպարներ՝ Յա. Ժիժկայի հուշարձանի (Տաբոր քաղաքի համար) նախագիծը (բրոնզ, 1870-ական թթ.), խմբաքանդակներ Պրագայի Պալացկու կամրջի համար (բրոնզ, 1881—97), Սուրբ Վացլավի հուշարձանը Պրագայում (բրոնզ, բացումը՝ 1913): Հեղինակ է բազմաթիվ դիմաքանդակների:

**ՄԻՍԼԻՎԵՉԵԿ** (Mysliveček) Յոսեֆ (1737—1781), չեխ կոմպոզիտոր և դիրիժոր: Բոլոնիայի ֆիլհարմոնիկ ակադեմիայի անդամ (1771): Սովորել է Պրագայում, որտեղ և ստեղծել է առաջին սիմֆոնիաները (1762): 1763-ից ապրել է Իտալիայում: 1770-ին Բոլոնիայում հանդիպել է պատանի Մոցարտին, վերջինս բարձր է գնահատել Մ-ի երաժշտությունը: Մ. մոտ 30 օպերաների հեղինակ է («Հիպերմնեստրա», «Թամերլան Մեծ», «Մոնտեսումա», «Էցիո», «Օլիմպիադա», «Արմիդա» ևն, 1767—80-ին մեծ հաջողությամբ ներկայացվել են Իտալիայի քաղաքներում, Պրագայում, Վիեննայում), որոնցում զարգացրել է իտալ. seria-opera-ի ավանդույթները: Գրել է նաև օրատորիաներ, սիմֆոնիաներ, նախերգանքներ, կոնցերտներ, լարային անսամբլներ ևն (այս երկերում զգացվում է մոտիկությունը Մոցարտի վաղ շրջանի ստեղծագործությանը, որին նույնիսկ վերագրում էին Մ-ի որոշ գործեր, դրանց թվում՝ «Աբրահամ և Իսահակ» օրատորիան): Մ-ի երաժշտությունը կրել է իտալ. ազդեցություն, բովանդակում է նաև չեխ. ժող. երգայնության տարրեր:

*Գրկ.* Ш а г и н я н М., Иозеф Мысливечек, 2 изд., М., 1968.

**ՄԻՍԿԻՆ-ԲՈՐՋԻ** [1810, Նախիջևան — 1847, գ. Ասկերան (այժմ՝ ԼՂԻՄ Ասկերանի շրջանում)], հայ աշուղ: Ապրել ու գործել է հիմնականում Գանձակում և շրջակայքում: Հորինել է հայերեն և թուրքերեն երգեր: Շրջելով գյուղերում՝ նաև տիկնիկներ է խաղացրել: 1832-ից կազմել է «Դավթար»: Մ-Բ-ի առանձին երգերի խոսքերը տպագրվել են մամուլում և ժողովածուներում: Պահպանվել են նրանցից մի քանիսի մեղեդիները, որ կատարվում են և հրատարակված են Ա. Քոչարյանի կազմած «Հայ գուսանական երգեր» (1976) ժողովածուում: *Մ. Մանուկյան*

**ՄԻՍԿԻՆՅԱՆ** (Մ ի ս կ ի ն) Երվանդ (Է դ վ ա ր դ) Գևորգի (1893—1943), Հյուսիսային Կովկասում և Անդրկովկասում հեղափոխական շարժումների մասնակից: ՍՄԿԿ անդամ 1917-ից: 1918—20-ին հեղափոխական գործունեություն է ծավալել Վրաստանում: 1920-ին Թիֆլիսում խմբագրել է «Նոր ուղի» բոլշևիկյան թերթը: Նույն թվականին արտաքսվել է երկրամասից: 1920-ի նոյեմբերին 11-րդ կարմիր բանակի հետ մտել է Հայաստան: 1921-ին ղեկավար մասնակցություն է ունեցել *Լոռու «Չեզոք գոտու»*-մ կազմակերպված ապստամբությանը: Եղել է ՀԿ(բ)Կ Դիլիջանի գավկոմի բյուրոյի անդամ և բաժնի վարիչ: Այնուհետև ղեկավարել է Հայկական հեռագրական գործակալությունը (այժմ՝ Արմենպրես): Երկար տարիներ աշխատել է Անդրկովկասյան Պետքաղվարչությունում: *Լ. Առաքելյան*

**ՄԻՍՈՒԽՈՐ**, գյուղ Տրապիզոնի վիլայեթի Սյուրմենե գավառակում, ծովափից մոտ 20 *կմ* հեռու: Գյուղի հայ բնակիչները բռնի մահմեդականացվել են: 1914-ին գյուղն ուներ մոտ 40 տուն հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի եկեղեցին վեր է ածվել մզկիթի: *Բ. Թոռլաքյան*

**ՄԻՍՍԻՍԻՊԻ** (Mississippi, հնդկացիների լեզվով՝ մեծ գետ), գետ ԱՄՆ-ում: Երկարությունը 3950 *կմ* է, *Միսսուրի* վտակի ակունքից՝ 6420 *կմ*, ավազանը՝ 3268 հզ. *կմ*²: Սկիզբ է առնում երկրի հս-ում՝ Նիկոլետ Կրիկից: Հս-ից հվ. կտրում է ԱՄՆ տերիտորիան և թափվում Մեքսիկական ծոց: Խոշոր վտակներն են Միննեսոթան, Դե Մոյնը, Միսսուրին, Արկանզասը, Ռեդ Ռիվերը, Վիսկոնսինը, Իլինոյսը, Օհայոն: Հովիտը բաժանվում է 3 մասի, վերին մասում գետը հոսում է մանր լճերով, կան սահանքներ: Միննեապոլիս քաղաքից մինչև Միսսուրիի գետաբերանը հունը շլյուզավորված է: Միջին մասում Մ. հոսում է առավելապես մեկ հունով, հովտի լայնությունը 10—15 *կմ* է՝ սահմանափակված զառիթափ լանջերով: Միսսուրին ընդունելուց հետո ջուրը պղտորվում է: Ստորին մասում հոսում է 25—100 *կմ* լայնությամբ հովտով, հունը գալարուն է՝ բազմաթիվ բազուկներով, հնահուներով և ընդարձակ ճահիճներով: Եզրջափակված է բնական առափնյա թմբերով, որոնք արհեստականորեն ամրացված են հեղեղումներից պաշտպանվելու համար: Բատոն Ռուժ քաղաքից ցած Մ. առաջացնում է 32 հզ. *կմ*² տարածությամբ թիակաձև դելտա, որը Մեքսիկական ծոցում տեղ-տեղ տարեկան աճում է մինչև 85—100 *մ*: Ջրի տարեկան հոսքը 600 *կմ*³ է, բերվածքները՝ 360 մլն *տ*: Մ. ունի խառը սնում: Բնորոշ են գարնանային ու ամառային վարարումները և անձրևային հորդացումները: Աղետալի հեղեղումներ են գրանցվել 1844, 1913, 1927, 1937, 1947, 1951 և 1965 թթ.: Հեղեղումներից պաշտպանվելու համար ստորին հոսանքում կառուցվել են հիդրոտեխնիկական կառույցներ: Ջրի տարեկան միջին ծախսը գետաբերանում 19 հզ. *մ*³/*վրկ* է, առավելագույնը՝ 50—80 հզ. *մ*³/*վրկ*, նվազագույնը՝ 3—5 հզ. *մ*³/*վրկ*: Ջրի մակարդակի միջին տարեկան տատանումը Սենտ Փոլի մոտ 7,2 *մ* է, Կեյրոյի մոտ՝ 18,3 *մ*, գետաբերանում՝ 5—6 *մ*: Վերին հոսանքներում 3—4 ամիս սառցակալում է:

Մ-ի համակարգը տնտ. կարևոր նշանակություն ունեցող 25 հզ. *կմ* երկարությամբ ջրային ուղի է: Նավարկելի ջրանցքներով ու գետերով միացած է Մեծ լճերի ավազանի, Ս. Լավրենտիոս գետով՝ Ատլանտյան օվկիանոսի հետ: Օվկիանոսային նավերը Մ-ով բարձրանում են մինչև Բատոն Ռուժ: Մ-ի համակարգի էներգապաշարները 275 մլն *կվտ* են: Կիոկակ քաղաքի մոտ կա ՀԷԿ:

Մ-ի ափերին են Միննեապոլիս, Դավենպորտ, Սենտ Լուիս, Մեմֆիս, Բատոն Ռուժ, Նոր Օռլեան քաղաքներն ու գետային նավահանգիստները:

**ՄԻՍՍԻՍԻՊԻ** (Mississippi), նահանգ ԱՄՆ-ի հարավում: Տարածությունը 123,6 հզ. *կմ*² է, բն. 2,3 մլն (1980, որից 36,7%-ը՝ նեգրեր): Քաղաքային բնակչությունը մոտ 45% է, վարչական կենտրոնն ու խոշոր քաղաքը՝ Ջեքսոնը: Մակերևույթի մեծ մասը հարթավայրային է՝ կտրտված Միսսիսիպի գետի ձախ վտակներով: Մ. ագրարային նահանգ է: Մշակվող հիմնական կուլտուրան բամբակն է (Միսսիսիպի գետի ու Յազու վտակի հովիտներում), որի բերքով Մ. 2-րդն է երկրում (Տեխասից հետո): Մշակում են նաև սոյա, եգիպտացորեն, բրինձ, ցորեն, շաքարեղեգ: Զբաղվում են անասնապահությամբ, խոզաբու-

ծությամբ և թռչնաբուծությամբ: Կա նավթի, գազի հանույթ, սննդի, տեքստիլ, կարի, թաղանթանյութի-թղթի, քիմ. արդյունաբերություն, նավաշինություն:

**ՄԻՍՍՈՒՐԻ** (Missouri, տեղացի հնդկացիների լեզվով՝ տղմոտ գետ), գետ ԱՄՆ-ում, *Միսիսիպիի* խոշորագույն (աջափնյա) վտակը: Երկարությունը 4740 *կմ* է (այլ տվյալներով՝ 3970 *կմ*), ավազանը՝ 1370 հզ. *կմ²* (մոտ 10 հզ. *կմ²*՝ Կանադայի սահմաններում): Սկիզբ է առնում Ժայռոտ լեռների արլ. լանջերից (Ելլոուսթոնյան ազգային պարկի շրջանում) Ջեֆերսոն (հիմնական ակունքը) և Մադիսոն գետերի միախառնումից: Վերին հոսանքի մեծ մասը գտնվում է Ժայռոտ լեռներում, որտեղ Մ. տեղ-տեղ հոսում է կիրճերով, առաջացնում սահանքներ: Միջին հոսանքում կտրում է Միսսուրիի սարավանդը և առաջացնում խոր ու զառիվեր լանջերով հովիտ: Ջուրը պղտոր է, ցեխագորշավուն: Այստեղ կառուցված են խոշոր ամբարտակներ: Ստորին հոսանքում, Կենտրոնական հարթավայրերի շրջանում հունը գալարուն է, անկայուն, ողողատը պատնեշապատված: Խոշոր վտակներն են Ելլոուսթոնը, Պլաթը և Կանզասը: Սնումը ձնաանձրևային է: Գարնանային վարարումների ժամանակ ստորին հոսանքում ջրի մակարդակը բարձրանում է մինչև 8—12 *մ*, առավելագույն ծախսը մինչև 19 հզ. *մ³/վրկ* է, միջին ծախսը՝ գետաբերանում մոտ 2250 *մ³/վրկ*, տարեկան տիղմի քանակը՝ 220 մլն *տ*: Ջրամբարների համակարգն (Ֆորտ Պեկ, Հարիսոն, Օահե են) օգտագործվում է գետի հոսքը կարգավորելու, էլեկտրաէներգիայի արտադրության, ոռոգման և նավագնացության համար: Մ. նավարկելի է մինչև Ֆորտ Բենտոն քաղաքը: Նրա ափին են Սու Սիթի, Օմահա, Սենտ Ջոզեֆ, Կանզաս Սիթի քաղաքները:

**ՄԻՍՍՈՒՐԻ** (Missouri), նահանգ ԱՄՆ-ի կենտրոնական մասում, Միսսիսիպի և Միսսուրի գետերի ավազաններում: Տարածությունը 180,4 հզ. *կմ²* է, բն. 4,8 մլն (1980, 70%-ը՝ քաղաքային): Վարչական կենտրոնը՝ Ջեֆերսոն Սիթի: Խոշոր քաղաքներն են Սենտ Լուիսը և Կանզաս Սիթին: Մակերևույթը դեպի արմ. աստիճանաբար բարձրացող ալիքավոր հարթավայր է: Հվ-ում կրաքարային Օզարկ սարավանդն է (բարձրությունը՝ մինչև 540 *մ*): Կլիման բարեխառն է: Ինդուստրիալ-ագրարային նահանգ է: Կա կապարի (I տեղը՝ ԱՄՆ-ում), երկաթի հանքաքարի, քարածխի, բարիտի, շինանյութերի արդյունահանում: Արդյունաբերության հիմնական ճյուղերն են մեքենաշինությունը և սննդի արդյունաբերությունը: Զարգացած են ավիահրթիռային («Մագդոնել-Դուգլաս», Սենտ Լուիսում), ավտոմոբիլային (Կանզաս Սիթիում, Սենտ Լուիսում), ռադիոէլեկտրոնային, քիմ., միս պահածոների, ալրաղաց արդյունաբերությունը: Կա ճանապարհաշինական, գյուղատնտ. և կարի մեքենաների արտադրություն, կաշվի-կոշիկի, ցեմենտի արդյունաբերություն, սև և գունավոր մետալուրգիա: Անասնապահությունը տալիս է նահանգի գյուղատնտեսության ապրանքային արտադրանքի 70%-ը: Մշակում են եգիպտացորեն, սոյա, ցորեն, վարսակ, Միսսիսիպիի գետի հովտում՝ բամբակենի:

**ՄԻՍՏԵՐԻԱ** (հուն. μυστήριον— գաղտնի արբազործություն), ուշ միջնադարի կրոնական բովանդակությամբ թատերգության ժանր: Միջնադարյան Եվրոպայում Մ. են կոչվել XIV—XVI դդ. խաղացվող աստվածաշնչային թեմաներով ընդարձակ չափածո դրամաներ, որոնց ներկայացումները տեղի են ունեցել քաղաքների հրապարակներում՝ եկեղեցու սպասավորների և արհեստավորական համքարությունների նախաձեռնությամբ: Հաճախ Մ. ընդգրկել է մի քանի պիես և բեմադրվել մի քանի օր շարունակ (Առնուլ Գրեբանի Մ-ներից մեկը բաղկացած է 35 000 տողից և ունի 400 գործող անձ): Կրոնական տեսարանները միջնորդվել են ինտերմեդիաներով՝ կատակերգական-կենցաղային բնույթի դրվագներով: Մ. առավելապես զարգացել է Ֆրանսիայում: X դ. գոյություն է ունեցել նաև Իրանում, մուսլ *շախսեյ-վախսեյ* կրոնական ծիսակատարության մեջ: Մ-ից էլ առաջացել է պարսկ. ողբերգության թազիյե տեսակը: Մ. աստիճանաբար ձեռք է բերել աշխարհիկ ժող. բնույթ, որի պատճառով էլ եկեղեցին XVI դ. արգելել է Մ-ի ներկայացումները: XIX—XX դդ. 1-ին կեսին Մ-ներ երբեմն ներկայացվել են Օբերամմերգաուում (Գերմանիա), Փարիզում:

**ՄԻՍՏԵՐԻԱՆԵՐ**, որոշ աստվածություննեի (գլխավորապես մեռնող և հառնող բնույթը մարմնավորող) պաշտամունքին ձոնված գաղտնի ծիսակատարություններ ու արարողություններ անտիկ աշխարհում: Հին Հունաստանում առավել հայտնի Մ-ից են եղել Ելևսինյանը (պտղաբերության դիցուհի Դեմետրեի և նրա դուստր Պերսեփոնեի պատվին), Բաքոսյանը (Դիոնիսոսի պատվին), Որփեոսյանը (Որփեոսի պատվին) և Սամոթրակյանը (Կաբիրաների պատվին): Մ. կատարվել են գերազանցապես գիշերները՝ ջահերի ներքո և, սովորաբար, ուղեկցվել են ողբահանդեսներով, խրախճանքներով, երաժշտությամբ, երգերով ու պարերով: Մ-ի մասնակիցներին միստիգոգոսը խստորեն պարտավորեցրել է չհրապարակել աստվածների գաղտնի անունները և Մ-ի ժամանակ կատարվող սրբազան ծեսերն ու արարողությունները (մաքրագործումներ, աղոթքներ, օրհնանքներ, անեծքներ, հաղորդում, զոհաբերումներ են): Այդ ծեսերն ու արարողությունները մատուցվել են սրբազան ասքերի ու առասպելների դրամատիկական ներկայացումների ձևով, որոնցում զգալի տեղ է տրվել խորհրդապաշտական մտքերի մեկնաբանմանը: Օրինակ, Բաքոսյան Մ-ի մասնակիցները պատկերել են Դիոնիսոսի տանջանքը, մահը և հարությունը են: Այդ ներկայացումների ազդեցությամբ են սկզբնավորվել հին հուն. ողբերգությունները: Հին Հռոմում Մ. (հատկապես Բաքոսի, Կիբելայի, Իզիդայի, Միհրի) մեծ տարածում են գտել Հանրապետության վերջին շրջանում: Անտիկ Մ-ից են ծագել քրիստոնեական եկեղեցու որոշ խորհրդածեսերը (մեղքերի թողություն, մկրտություն են) և միջնադարյան կրոնական դրամաները (տես *Միստերիա*):

**ՄԻՍՏԻԿԱ** (< հուն. μυστικά — խորհրդավոր), կրոնական արարողություններ և դրանք իմաստավորող կրոնափիլիսոփայական աշխարհայացք, որոնք ընդունում են բացարձակին հասնելու հնարավորությունը գերբնական ճանապարհով: Մ-ի առաջին տարրերը, որպես կրոնական պատկերացումներ և գործողություններ, երևան են եկել նախնադարյան հավատալիքներում (ֆետիշիզմ, մոգություն են), որոնք հետագայում դարձել են ընդհանրապես կրոնի էական մասը: Մ. հոգեֆիզիկական վարժությունների կատարման (*յոգա*), որոշ առարկաների վրա (քրիստոնեության մեջ՝ խաչի) մտքի հիպնոսային սևեռման, աղոթքների միջոցով հավատացյալին հասցնում է էքստազի, որն իբրև թե հնարավորություն է տալիս հաղորդակցվել աստծու հետ: Մ. կապված է նաև *ճգնավորության* հետ: Միստիկական ուսմունքները ձևավորվել են Հնդկաստանում (*վեդանտա*), Չինաստանում (դաոսիզմ), Հունաստանում (*պյութագորասականություն*): Ոչ-աստվածաբանական համակարգերում հիմնական գաղափարը անդեմ տրանսցենդենտն է (*նեոպլատոնականությունում*՝ «միասնականը»): Զարգացման նոր աստիճան է միջնադարյան Մ., որն, ի հակադրություն *սխոլաստիկայի*, աստծու ճանաչողությունը տեսնում է տրամաբանական մտածողությունից դուրս՝ հայտնության մեջ: Քրիստոնեական եկեղեցին երբեմն դատապարտել է Մ., քանի որ այն վերջին հաշվով ավելորդ էր համարում հոգևորականության միջնորդ դերը աստծու և հավատացյալի միջև: Ֆ. Էնգելսը Մ. անվանել է «միջնադարյան օպոզիցիայի» դրսևորում: Մ-ի փիլ. հիմնավորման փորձեր են Ու. Ջեյմսի, Ա. Բերգսոնի, Մ. Ա. Սոլովյովի և ուրիշների ուսմունքները: Մ-ի երանգներ ունեն արդի բուրժ. որոշ տեսություններ (նեոթոմիզմ, էկզիստենցիալիզմ, պերսոնալիզմ են): Միստիկական ուսմունքներին հատուկ է հակումը դեպի *իռացիոնալիզմ* և *ինտուիտիվիզմ*, հրաժարումը հասկացությունների լեզվից հօգուտ նշանների լեզվի, Մ-ի իմաստի հաղորդման աննախադեպ ... անհնարինությունը են: Մ. իրականության աղավաղված արտացոլումն է և անհամատեղելի գիտական աշխարհայացքին:

**ՄԻՍՏՐԱԼ** (Mistral) Գաբրիելա (իսկականը՝ Լուսիլա Գոդոյ Ալկայագա, Godoy Alcayaga) (1889—1957), չիլիացի բանաստեղծուհի, ժողովրդական լուսավորության գործիչ: 1924—46-ին եղել է դիվանագիտական ծառայության մեջ զանազան երկրներում: 1946-ից մասնակցել է Ազգերի լիգայի, հետագայում՝ ՄԱԿ-ի աշխատանքներին: Մ-ի առաջին գրքում («Հուսահատություն», 1922) արտահայտված են կնոջ նվիրական զգացմունքներ՝ տռփոտ սեր, մայրության տենչ: Հաջորդ ժողովածուն («Տալա», 1938) արտացոլումն է Լատինական Ամերիկայի հասարակ մարդկանց խոհերի ու զգացմունքների: Մ-ի վերջին ժողովածուն է «Հնձան»-ը (1954); Նոբելյան մրցանակ (1945):

**ՄԻՍՏՐԱԼ** (Mistral) Ֆրեդերիկ (1830—1914), պրովանսացի բանաստեղծ: Մ-ի գեղարվեստական ճաշակը ձևավորվել է Հարավային Ֆրանսիայի բանահյուսու-

թյան, միջնադարյան և նոր պոեզիայի ազդեցությամբ: 1848-ից պարբերաբար լույս ընծայված բանաստեղծություններն առաջին անգամ ի մի են հավաքվել «Պրովանսացիներ» (1852) անթոլոգիայում: Մ. պրովանսական լեզուն ու գրականությունը վերակենդանացնող ֆելիբրների շարժման առաջնորդներից է: Խմբագրել է ալմանախներ, կազմել «Ֆելիբրիժի գանձը» (1879—1887) պրովանսերեն-ֆրանսերեն բառարանը: Նրա «Միրեյը» (1859) պոեմը բարձր են գնահատել Ա. Լամարթինը, Վ. Հյուգոն և ուրիշներ: Մ-ի ստեղծագործություններին բնորոշ է բանահյուսական հարուստ նյութը, ռոմանտիկականությունը: Նոբելյան մրցանակ (1904):

**ՄԻՍՏՐԱԼ** (ֆրանս. mistral), հյուսիս-արևմտյան ուժեղ և սառը քամի, երբեմն փչում է Սեվեններից դեպի Ֆրանսիայի Միջերկրածովյան ափը: Նկատվում է Ռոն գետի ակունքների մոտ, Մոնպելիե և Տուլոն քաղաքների միջև: Լինում է տարվա բոլոր եղանակներին, հատկապես ձմռանը: Նման է *բորա* քամուն:

**ՄԻՏԱՆՆԵՐԵՆ**, տես *Խուռիերեն*:

**ՄԻՏԱՆՆԻ**, Խուռի, Խանիգալբատ, Նախրայնա, հնագույն պետություն Հյուսիսային Միջագետքում: Մ. թ. ա. XVII դ. հողագործության և անասնապահության համար բարենպաստ պայմաններ ունեցող Խաբուր և Բալիխ գետերի հովիտներում կազմավորվել է Մ. պետությունը՝ Վաշշուկանե մայրաքաղաքով, որը հզորության է հասել մ. թ. ա. XVI—XV դդ.:

Մ-ի հիմնական բնակիչներն էին *խուռիները*:

Մ-ի մեզ հայտնի առաջին թագավորը Կիրտայի որդի Շուտտառնա I է (մ. թ. ա. XVI դ. վերջ), որին հաջորդել է Պարատառնան: Մ. թ. ա. XV դ. կեսին իշխել է Պարսադատտարի որդի Սաուսսադատտարը, որն իր ազդեցությանն է ենթարկել Կիլիկիան, Հյուսիսային Ասորիքը, Իսուվան (Ծոփք), Ալզեն (Աղձնիք), Առապխան և Ասորեստանի զգալի մասը՝ Աշշուր և Նինվե քաղաքներով: Խեթերի դեմ հաջող պատերազմներ վարելով, Մ. իր ազդեցությանն է ենթարկել Փոքր Ասիայի հվ-արլ. շրջանները, Ասորիքը, Փյունիկիան և Պաղեստինը: Սակայն Մ-ի հզորացմանը խոչընդոտում էին եգիպտ. փարավոնների ասիական արշավանքները: XV դ. վերջին իշխանության գլուխ անցած Արտադամա I հաշտության պայմանագիր է կնքել փարավոն Թութմոս IV-ի հետ և դուստրը կնության տվել նրան: Մ. հարկադրված էր պայքարել հզորացող Խեթական պետության դեմ: Խեթական թագավոր Խաթթուսիլի II նվաճել էր Վերին Եփրատի տարածքը, Հյուսիսային Ասորիքի առանձին շրջաններ, իր կողմը գրավել Մ-ի դաշնակից Կիցցուվատնայի թագավորին: Մ-ի թագավոր Շուտտառնա II կարողացել է վերագրավել կորցրած հողերը: Շուտտառնա II-ի դստեր և փարավոն Ամենհոթեպ III-ի ամուսնությամբ ամրապնդվել են Եգիպտոսի և Մ-ի փոխհարաբերությունները: Շուտտառնա II-ի մահից հետո, հավանաբար թագավորական ընտանիքից ումն Արտադամա (Արտադամա II) դաշնակցել է խեթական թագավոր Սուպպիլուլիումա I-ի հետ և նրա օժանդակությամբ փորձել խլել գահը *Տուշրատտա* (XIV դ. կես) թագաժառանգից: Գահակալական կռիվներն ավարտվել են Տուշրատտայի հաղթանակով: Այնուհետև Մ. ներքաշվել է երկարատև պատերազմների մեջ: Տուշրատտայի գահակալման առաջին տարիներին տեղի է ունեցել միտաննական առաջին պատերազմը Խեթական պետության հետ: Վճռական ճակատամարտում Տուշրատտան պարտության է մատնել Սուպպիլուլիումա I-ի բանակը: Մ-ի դիրքը ամրապնդելու նպատակով Տուշրատտան դստերը կնության է տվել Եգիպտոսի փարավոն Ամենհոթեպ IV-ին: Սուպպիլուլիումա I պայմանագրեր կնքելով Խայասայի (Հայասայի) Խուկկաննա և Կիցցուվատնայի Սունասսուրա I թագավորների հետ Տուշրատտային զրկել է դաշնակիցներից: Մ-ի և Խեթական պետության միջև միտաննական երկրորդ և երրորդ պատերազմների հետևանքով Տուշրատտան կորցրել է իր ազդեցությունը հարևան երկրներում, երկիրը թուլացել է: Այս պայմաններում տեղի է ունեցել պետ. հեղաշրջում, Տուշրատտան սպանվել է որդու ձեռքով: Թագաժառանգը նույնպես դարձել է մի այլ դավադրության զոհ: Գահ բարձրացած Արտադամա II, իր որդուն՝ Շուտտառնա III-ին նշանակել է բանակի գլխավոր հրամանատար և նրա միջոցով հետապնդել Տուշրատտայի կողմնակից պետ. գործիչներին: Տուշրատտայի որդի Շատտիվազա թագաժառանգը, երկրից հեռանալով՝ հարկադրված դիմել է Սուպպիլուլիումա I-ի օգնությանը և պարտության մատնելով իր հակառակորդներին՝ հաստատվել հայրական գահի վրա: Նա կնության է առել Սուպպիլուլիումա I-ի դստերը և դարձել Խեթական պետության հավատարիմ դաշնակիցը: Շատտիվազայի մահից հետո Մ-ում հաջորդաբար գահակալել են Շատտուարա I (մ. թ. ա. XIV դ. վերջ), Վասաշատտան (մ. թ. ա. XIII դ. սկիզբ) և Շատտուարա II, որոնք պայքարել են Ասորեստանի դեմ: 1270-ական թթ. Ասորեստանի թագավոր Սալմանասար I (մ. թ. ա. 1274—1245) անկման է հասցրել Մ.: Մ. տրոհվել է մանր իշխանությունների:

Մ. վաղ ստրկատիրական պետություն էր: Պետության գլուխ կանգնած էր թագավորը, որը հենվում էր ավագանու վրա: Պաշտոնական լեզուներն էին *խուռիերենը* և *աքքադերենը*: Մ-ի բանակը կազմված էր հետևակից, հեծելազորից և մարտակառքերից: Գլխավոր հրամանատարը թագաժառանգն էր:

Մ-ի տարածքում կանոնավոր պեղումներ չեն կատարվել: Տակավին անհայտ են Վաշշուկանե մայրաքաղաքի և մյուս կարևոր բնակավայրերի տեղերը, չեն հայտնաբերվել Մ-ի արքունի արձանագրություններ ու տարեգրություններ: Մ-ի հոգևոր մշակույթի մասին կցկտուր տեղեկություններ են պահպանվել խեթական արքունի դիվանի բնագրերում: Մ-ի դիցարանում կարևորվել են շանթի ու ամպրոպի աստված Թեշուբը, նրա կինը համարվող Խեբատը, պտղաբերութ. և սիրո դիցուհի Շաուշկան, հնդիրանական (Միթրա, Վարունա, Ինդրա), բաբելա-ասորեստանյան, խեթական աստվածություններ:

Մ-ի արքայացանկը. Կիրտա (՞), Շուտտառնա I (մ. թ. ա. XVI դ. վերջ), Պարատառնա (մ. թ. ա. XV դ. սկիզբ), Պարսադատտար (մ. թ. ա. XV դ. կես), Սաուսսադատտար (մ. թ. ա. XV դ. 2-րդ կես), Արտադամա I (մ. թ. ա. XV դ. վերջ), Շուտտառնա II (մ. թ. ա. XIV դ. սկիզբ), Արտաշշումարա (մ. թ. ա. մոտ XIV դ. 1-ին կես), Տուշրատտա (մ. թ. ա. XIV դ.), Արտադամա II (մ. թ. ա. XIV դ.), Շուտտառնա III (մ. թ. ա. XIV դ. 2-րդ կես), Շատտիվազա (մ. թ. ա. XIV դ. 2-րդ կես), Շատտուարա I (մ. թ. ա. XIV դ. վերջ), Վասաշատտա (մ. թ. ա. XIII դ. սկիզբ), Շատտուարա II (մ. թ. ա. XIII դ. սկիզբ):

*Գրկ.* Խաչատրյան Ա., Հայաստանի սեպագրական շրջանի քննական պատմություն, Ե., 1933: Дьяконов И. М., Арийцы на Ближнем Востоке: конец мифа, «ВДИ», 1970, № 4; Аветисян Г. М., Военно-политические отношения между Митанни и Хеттским государством в середине XIV в. до н. э., «ԼՀԳ», 1977, № 9; Նույնի, Политическая история Митанни в XVI—XV вв. до н. э., «ВДИ», 1978, № 1; Նույնի, Государство Митанни в эпоху войн с хеттским царем Суппилулиумой I, «ՊԲՀ», 1978, № 1; Նույնի, Хурриты на рубежах Малой Азии до установления могущества Митанни, «Древний Восток», III, Е., 1978. Kammenhuber A., Die Arier im Varderen Orient, Haidelberg, 1968.
*Հ. Ավետիսյան*

**ՄԻՏԻՆ** Մարկ Բորիսովիչ (ծն. 1901), սովետական փիլիսոփա և հասարակական գործիչ: ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս (1939): ՍՄԿԿ անդամ՝ 1919-ից: Ավարտել է Կարմիր պրոֆեսուրայի ինստ-ի փիլ. բաժինը (1929): Վարել է մի շարք պատասխանատու պաշտոններ: 1967-ից ՍՍՀՄ ԳԱ Նախագահության հասարակական գիտությունների սեկցիային կից արտասահմանյան գաղափարական հոսանքների պրոբլեմների գիտական խորհրդի նախագահն է: Աշխատությունները նվիրված են մարքսիստական փիլ-յան զարգացման լենինյան փուլին, փիլ-յան կուսակցականությանը, պետության և սոցիալիստական դեմոկրատիայի տեսությանը, իմացաբանությանը, փիլ-յան պատմությանը, բուրժ. գաղափարախոսության և օպորտունիզմի քննադատությանը:

ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր (1943): Կուսակցության XVIII—XX համագումարներում ընտրվել է ՍՄԿԿ ԿԿ անդամ: ՍՍՀՄ III—V գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Պարգևատրվել է Լենինի 2, Հոկտեմբերյան հեղափոխության և երեք այլ շքանշաններով:

*Երկ.* Гегель и теория материалистической диалектики, М., 1932; Боевые вопросы материалистической диалектики, [М.], 1936; К столетию «Манифеста Коммунистической партии» Маркса и Энгельса, [М.], 1948; Историческая роль В. Г. Плеханова в русском и международном рабочем движении, М., 1957; Философия и современность, М., 1960; Опыт Октября и закономерности социалистической революции, [М., 1967]; В. И. Ленин и актуальные проблемы философии, М., 1971; Философия и социальный прогресс, М., 1979.

**ՄԻՏԻՇՉԻ**, քաղաք ՌՍՖՍՀ Մոսկվայի մարզում: Համանուն շրջանի կենտրոնն է, երկաթուղային կայարան: 143 հզ. բն. (1980): Կան մեքենաշինական, սարքա-

շինական, գեղարվեստական ձուլման, շինանյութերի գործարաններ: Հայտնի է XV դարից:

**ՄԻՏԿԵՎԻՉ** Վլադիմիր Ֆյոդորովիչ (1872—1951), սովետական էլեկտրատեխնիկ: ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկոս (1929, թղթակից անդամ 1927), ՌՍՖՍՀ գիտ. և տեխ. վաստ. գործիչ (1938): Ավարտել է Պետերբուրգի համալսարանը (1895): Մասնակցել է ԳՈԷԼՌՈ-ի պլանի մշակմանը: Աշխատանքները վերաբերում են էլեկտրամագնիսական երևույթների, լարային և ոչ լարային կապի պրոբլեմների, էլեկտրաէներգիայի հաղորդման ուսումնասիրմանը: Առաջարկել է էլեկտրահաղորդման բարձրավոլտ գծերի ֆազերի բաժանումը: Հեղինակ է էլեկտրատեխնիկայի տեսական հիմունքների մի քանի դասընթացների: Լենինյան (1928) և ՍՍՀՄ պետ. (1943) մրցանակների դափնեկիր: Պարգևատրվել է Լենինի շքանշանով:

**ՄԻՏՈԳԵՆԵՏԻԿ ՃԱՌԱԳԱՅԹՆԵՐ**, փոքր ինտենսիվության, 1900—3250Å ալիքի երկարության ուլտրամանուշակագույն ճառագայթներ: Առաջանում են բույսերի և կենդանիների բջիջներում ու հյուսվածքներում, ֆերմենտային ռեակցիաների ժամանակ: Հայտնաբերել է Ա. Գուրվիչը (1923) և ցույց տվել դրանց խթանող դերը բջիջների բաժանման՝ *միտոզի* ժամանակ (այստեղից՝ անվանումը): Մ. ճ-ի կենսաբանական ազդեցությունը պայմանավորված է դրանց ներգործության տակ բջիջներում շղթայական քիմ. պրոցեսների առաջացմամբ: Մ. ճ-ի սպեկտրի վերլուծությունից պարզվել է, որ նրանց ինտենսիվությունը կախված է հետազոտվող օբյեկտի ֆիզիոլոգիական վիճակից: Հակասական փորձնական արդյունքների պատճառով Մ. ճ-ի գոյությունը վիճարկվում է:

**ՄԻՏՈԶ** (< հուն. μίτος — թել), կ ա ր ի ո կ ի ն ե զ, ա ն ո ւ ղ ղ ա կ ի բ ա ժ ա ն ո ւ մ, *բջջի* կիսման (բաժանման) եղանակ. ապահովվում է մայր բջջի գենետիկական նյութի համաչափ բաշխումը երկու դուստր բջիջներում և *քրոմոսոմների* հաջորդականությունը (ժառանգական կարգ) բջջի մի շարք սերունդներում: Մ-ին նախորդող շրջանում (ինտերֆազի վերջում) կրկնապատկվում է դեզօքսիռիբոնուկլեինաթթուն (ԴՆԹ), սինթեզվում *միտոտիկ ապարատի* նյութը (ցենտրիոլներ) և կուտակվում էներգիա մակրոէրգիկ միացությունների ձևով: Տարբերում են Մ-ի չորս փուլ. պրոֆազ, մետաֆազ, անաֆազ և տելոֆազ. պ ր ո ֆ ա զ ո ւ մ կորիզը մեծանում է, ուռչում, քրոմոսոմները պարուրաձև ոլորվում են, հաստանում և կարճանում: Ցենտրիոլները, որոնք յուրաքանչյուր բջջում 2-ն են, տարամիտվում են դեպի բևեռները: Դրանց միջև բարակ թելիկներ են գոյանում, որոնք ցենտրիոլների հետ միասին կոչվում են բջջի բաժանման ի լ ի կ: Պրոֆազի վերջում կորիզաթաղանթը լուծվում է, քրոմոսոմներն ազատ տեղաբաշխվում են բջջապլազմայում: Մ ե տ ա ֆ ա զ ո ւ մ քրոմոսոմները տեղաշարժվում են դեպի բաժանման իլիկի հասարակածը, կպչում իլիկի թելիկներին և տեղի է ունենում քրոմատիդների (քույր քրոմոսոմների) անջատում: Ա ն ա ֆ ա զ ո ւ մ դուստր քրոմոսոմները տարամիտվում են դեպի բջջի բևեռները: Տ ե լ ո ֆ ա զ ո ւ մ բջջի բևեռներին մոտեցած դուստր քրոմոսոմները կորցնում են իրենց ձևը, ապագալարվում, երկարում են և դառնում անտեսանելի: Քայքայվում է միտոտիկ ապարատը: Դուստր քրոմոսոմների յուրաքանչյուր խումբ շրջապատվում է կորիզաթաղանթով և ձևավորվում *կորիզակը*: Բաժանվում է նաև բջջապլազման, վերականգնվում բջջի թաղանթը, որի հետևանքով դուստր բջիջները անջատվում են միմյանցից: Մ-ի օրինաչափությունները համընդհանուր են տարբերակված կորիզ ունեցող բոլոր բջիջների համար: Մ-ի տևողությունը կախված է բջիջների չափերից, կորիզների թվից, շրջապատող միջավայրի պայմաններից. կենդանական բջիջների համար այն 30—60 րոպե է, բուսական բջիջներինը՝ 2—3 ժամ: Օրգանիզմում Մ. կարգավորվում է նյարդահումորալ համակարգով և ենթարկվում օրական տատանումների: Օրինակ՝ գիշերային կենդանիների մեծ մասի օրգաններում Մ. առավելապես տեղի է ունենում առավոտյան, ամենաքիչը՝ գիշերը: Մարդու և ցերեկային կենդանիների մոտ նկատվում է օրական ռիթմի հակառակ դինամիկա: Մ. կարող է խանգարվել տարբեր ախտաբանական պրոցեսների հետևանքով:




Միտոզի սխեման. *1*, *2*. պրոֆազ, *3*. պրոմետաֆազ, *4*. մետաֆազ, *5*. անաֆազ, *6*. վաղ տելոֆազ, *7*. ուշ տելոֆազ

**ՄԻՏՈՏԻԿ ԱՊԱՐԱՏ**, *միտոզին* մասնակցող քրոմոսոմային և աքրոմատինային ժամանակավոր կառուցվածքների ամբողջություն, որն իրականացնում է քրոմոսոմների շարժումը դեպի կիսվող բջջի բևեռներ: Ձևավորվում է ինչպես ինտերֆազային բջջի մակրոմոլեկուլներից, այնպես էլ բաժանումից առաջ սինթեզված նյութերից: Մ. ա. կազմված է ցենտրոսոմայով շրջապատված ցենտրիոլներից, բջջի բաժանման իլիկից (միկրոխողովակների համակարգ) և միջանկյալ նյութից: Բաղկացած է ռիբոնուկլեոպրոտեիդներից (90%), ռիբոնուկլեինաթթվից (6%), աքրոմատինային մասը՝ ակտինին նման սպիտակուցներից: Հայտնաբերված են նաև բազմաշաքարներ, լիպիդներ, ադենոզինեռֆոսֆատազ: Ցենտրիոլները մոտ 0,15 *մկմ* տրամագծով միկրոխողովակների զույգ գոյացություններ են: Ենթադրվում է, որ դրանք կարգավորում են իլիկի առաջացումը, տարածական կողմնորոշումն ու աճը, չնայած վերջինս տեղի ունի նաև ցենտրիոլներ չպարունակող (բուսական) բջիջներում: Բջջի բաժանման իլիկը կազմված է 2 տիպի՝ բևեռներն իրար և յուրաքանչյուր քրոմոսոմը բևեռներից որևէ մեկին միացնող ցիտոպլազմային թելիկներից: Մասնակցում է քրոմոսոմների բաշխմանը դուստր բջիջներում: Մ. ա-ի ձևավորումը սովորաբար սկսվում է միտոզի պրոֆազում և ավարտվում մետաֆազում: Մ. ա-ի վնասվածքները և սինթեզի խանգարումները հանգեցնում են միտոզի ախտաբանության:

**ՄԻՏՈՔՈՆԴՐԻԱՆԵՐ** (< հուն. μίτος — թել և χονδρίον — հատիկ), ք ո ն դ ր ի ո ս ո մ ն ե ր, բուսական և կենդանական բջջի կարևորագույն և մշտապես գոյություն ունեցող օրգանոիդներ, որոնք ապահովում են բջջի շնչառությունը: Պարունակվում են բոլոր աերոբ էուկարիոտների բջիջների ցիտոպլազմաներում: Բացակայում են միայն բակտերիաների, կապտականաչ ջրիմուռների ևն պրոկարիոտների մոտ, որտեղ դրանց ֆունկցիան կատարում են բջջային թաղանթները: Մ. կարևոր դեր են խաղում ֆոսֆորիլացման, իոնների տեղափոխման պրոցեսում, դրանցում են կենտրոնացած որոշ ֆերմենտային ռեակցիաներ ևն: Մ-ի հիմնական ֆունկցիան օրգ. միացությունների օքսիդացումն է և առաջացած էներգիայի օգտագործումը: Նույնատիպ բջիջներում Մ-ի քանակը համեմատաբար հաստատուն է և կարող է անցնել 1000-ից: Սովորաբար ձողիկաձև, թելանման կամ ձվաձև, ճյուղավորված, 0,5—1,5 *մկմ* չափերով գոյացություններ են: Ունեն 2 թաղանթ՝ արտաքին հարթ և ներքին ծալքավոր, որն առաջացնում է կատարներ՝ կ ր ի ս տ ն ե ր: Մ-ի ներքին տարածությունը լցված է *մատրիքսով*, որը պարունակում է նաև բազմաթիվ կառուցվածքային սպիտակուցներ ու ֆերմենտներ (բջջի սպիտակուցների մոտ 30%-ը), հատուկ ձևի սեփական ԴՆԹ (բջջի ԴՆԹ-ի 0,2%-ը), ՌՆԹ-ի բոլոր տեսակները և առանձնահատուկ միտոքոնդրիային ռիբոսոմներ, որոնք ապահովում են սպիտակուցների ինքնուրույն կենսասինթեզը Մ-ում: Մ-ի առաջացման վերաբերյալ չկա միասնական տեսակետ: Ենթադրվում է, որ էվոլյուցիայի պրոցեսում, Մ. կարող էին առաջանալ մատրիքսի ուլտրակառուցվածքներից, բջջի մյուս թաղանթային կառուցվածքներից կամ այլ եղանակներով:

*Գրկ*. Ленинджер А., Митохондрия, пер. с англ., М., 1966; Рудин Л., Уилки Д., Биогенез митохондрий, пер. с англ., М., 1970.

**ՄԻՏՏԱԳ-ԼԵՖԼԵՐ** (Mittag-Leffler) Մագնուս Գուստավ (1846—1927), շվեդ մաթեմատիկոս: Ավարտել է Ուպսալայի հա-

մալսարանը (1827): Հելսինգֆորսի (1877-ից) և Ստոկհոլմի (1881-ից) համալսարանների պրոֆեսոր: 1882-ին հիմնել է մաթ. խոշոր պարբերականներից մեկը՝ «Acta mathematica»-ն: Աշխատանքները վերաբերում են անալիտիկ ֆունկցիաների տեսությանը (զբաղվել է ֆունկցիաների անալիտիկ ներկայացման հարցերով): Մտցրել է ամբողջ ֆունկցիաների մի դաս (տես *Միտտագ-Լեֆլերի տիպի ֆունկցիաներ*):

**ՄԻՏՏԱԳ-ԼԵՖԼԵՐԻ ՏԻՊԻ ՖՈՒՆԿՑԻԱՆԵՐ**, ֆունկցիաների դասեր, որոնք կարևոր դեր են խաղում կոմպլեքս փոփոխականի տեսության մեջ և կիրառություններում: Մ-Լ. տ. ֆ. են կոչվում

$$E_\rho(z, \mu)=\sum_{k=0}^{\infty} \frac{z^k}{\Gamma(\mu+{}^k/_\rho)} \quad (\mu>0, \quad \rho>0)$$

տեսքի ֆունկցիաները: $E_\rho(z, \mu)$-ն $\rho$ կարգի և 1 տիպի ամբողջ ֆունկցիա է: Մի շարք տարրական ֆունկցիաներ $E_\rho(z,\mu)$-ի մասնավոր դեպքեր են.

$$E_1(z,1)=e^z, \; E_{\frac{1}{2}}(z^2,1)=\mathrm{ch}\sqrt{z},$$

$$E_1(z, 2)=\frac{e^z-1}{2}:$$

$E_\rho(z, \mu)$-ն $\mu=1$ (մասնավոր) դեպքում մտցրել է Միտտագ-Լեֆլերը (1903), տարամետ շարքերի էապես նոր գումարման մեթոդ առաջարկելու կապակցությամբ. ընդհանուր դեպքում դիտարկել է Վիմանը (1905): Մ-Լ. տ. ֆ. են հանդես գալիս, օրինակ, $(x-t)^{1/\rho-1}$ կորիզով վոլտերրայի տիպի ինտեգրալ հավասարման ռեզոլվենտում, ինչպես նաև մեխանիկայի որոշ խնդիրներում:

Մ-Լ. տ. ֆ-ի առավել կարևոր հատկությունները ստացվում են

$$E_\rho(z, \mu)=\frac{\rho}{2\pi i}\int_\gamma \frac{e^{z^\rho}\zeta^{\rho(1-\mu)}}{\zeta-z}\,d.\zeta,$$

$$E_\rho(z, \mu)=\rho z^{\rho(1-\mu)}e^{z^\rho}+\frac{\rho}{2\pi i}\int_\gamma \frac{e^{z^\rho}\zeta^{(1-\mu)}}{\zeta-z}d\zeta$$

ինտեգրալ ներկայացումներից:

(1)-ից և (2)-ից ստացվում են ասիմպտոտիկ բանաձևեր՝ մոդուլով մեծ z-երի համար՝ $|\arg z| < \frac{\pi}{2\rho}$ անկյան ներսում $E_\rho(\mu, z)$-ն մոտավորապես $e^{z^\rho}$ է, անկյունից դուրս՝ $\frac{1}{z}$: Հիմնականում այս հատկությունները հնարավորություն տվեցին Մ. Մ. *Ջրբաշյանին* ստեղծելու կոմպլեքս տիրույթում ինտեգրալ ձևափոխությունների և ինտեգրալ ներկայացումների մի տեսություն, որը Ֆուրիե-Պլանշերելի և Վիներ-Պելիի դասական տեսությունների բնական և հեռու գնացող ընդհանրացումներն են:

Գրկ. Джрбашян М. М., Интегральные преобразования и представления функций в комплексной области, М., 1966; Бейтмен Г., Эрдейи А., Высшие трансцендентные функции, т. 3, М., 1967.
*Ս. Հակոբյան*

**ՄԻՏՐՈՊՈՒԼՈՍ** (Μητρόπουλος) Դիմիտրիոս (1896—1960), հույն դիրիժոր, դաշնակահար և կոմպոզիտոր: Սովորել է Աթենքի կոնսերվատորիայում, 1930-ից նույն կոնսերվատորիայի պրոֆեսոր (կոմպոզիցիայի դասարան): 1937-ից ապրել է ԱՄՆ-ում: 1949-ից Նյու Յորքի ֆիլհարմոնիկ նվագախմբի դիրիժոր, 1950—58-ին՝ գլխավոր դիրիժոր, 1954—58-ին՝ «Մետրոպոլիտեն օպերա»-ի դիրիժոր: Ելույթներ է ունեցել Ֆլորենցիայի, Զալցբուրգի փառատոներին, Միլանում («Լա Սկալա»), Վիեննայում (պետ. օպերա) և այլ քաղաքներում: 1934-ին հյուրախաղերով հանդես է եկել ՍՍՀՄ-ում: Մ-ի օպերային երկացանկում տեղ են գտել Վ. Ա. Մոցարտի, Ջ. Վերդիի, Ջ. Պուչչինիի, Մ. Ռավելի, Դ. Միյոյի, Պ. Չայկովսկու («Եվգենի Օնեգին»), Մ. Մուսորգսկու («Բորիս Գոդունով») օպերաները: Գրել է «Քույր Բեաթրիս» օպերան (1920), սիմֆոնիկ պոեմ, «Concerto grosso», լարային կվարտետ, դաշնամուրային երկեր, երաժշտություն թատերական ներկայացումների համար:

**ՄԻՏՔ**, *մտածողության* արդյունքի այն նվազագույն միավորը, որը որպես ինֆորմացիա կարող է հաղորդվել մարդուց մարդուն խոսքի և այլ միջոցներով: Հոգեբանական առումով ձևավորվում է ներքին խոսքի միջոցով՝ որպես մտքային գործողությունների արդյունք: Լեզվաբանության մեջ հաճախ նախադասությունը սահմանվում է որպես Մ. արտահայտող լեզվական միավոր՝ Այն Մ., որը կարող է լինել ճշմարիտ կամ կեղծ, ավանդական տրամաբանության մեջ կոչվում է *դատողություն*: «Մ.» տերմինը հաճախ օգտագործվում է լայն առումով՝ նշանակելով որևէ բնագավառի վերաբերյալ ըմբռնումների, գիտելիքների ամբողջությունը (օրինակ, «հասարակական Մ-ի պատմություն»), երբեմն էլ՝ ընդհանրապես մտածողություն, գիտակցություն (օրինակ, «Մարդը գիտակցական գործողությունն սկզբում կատարում է Մ-ում, այսինքն՝ մտովի, հետո՝ իրականության մեջ»):
*Վ. Բաղդասարյան*

**«ՄԻՏՔ»**, ազգային, հասարակական, գրական և քաղաքական շաբաթաթերթ: Լույս է տեսել 1912—17-ին, Թավրիզում: Խմբագիր-հրատարակիչ՝ Ա. Տեր-Վարդանյան: Ներկայացրել է իրանահայ գաղութի ներքին կյանքը: Անդրադարձել է Հայաստանի և հայ ժողովրդի ճակատագրին, ծանոթացրել պատմությանը: Հասարակական-քաղ. բնույթի հոդվածների մի մասը տպագրել է ռուս.: Շաբաթաթերթի գրական բաժնում տեղ են գտել իրանահայ գրողների ստեղծագործությունները, գրախոսականներ, լուրեր մշակութային կյանքից: Ունեցել է նաև հավելված:
*Շ. Խուրշուդյան*

**«ՄԻՐ ԻՍԿՈՒՍՏՎԱ»**, գեղարվեստական խմբավորում Ռուսաստանում: Կազմավորվել է 1890-ական թթ. վերջին (պաշտոնապես՝ 1900-ին) Պետերբուրգում, երիտասարդ նկարիչների և արվեստի երկրպագուների խմբակի հիման վրա, Ա. Բ. *Բենուայի* և Ս. Պ. Դյագիլևի գլխավորությամբ: Որպես ցուցահանդեսային միություն, «Միր իսկուստվա» ամսագրի հովանավորությամբ գոյություն է ունեցել մինչև 1904-ը: 1904—10-ին «Մ. ի.»-ի անդամների մեծ մասը Ռուս նկարիչների միության կազմում էին: Հիմնական անդամներից (Լ. Ս. Բակստ, Մ. Վ. Դոբուժինսկի, Ե. Ե. Լանսերե, Ա. Պ. Օստրոումովա-Լեբեդևա, Կ. Ա. Սոմով) զատ «Մ. ի.» խմբավորման մեջ էին մտնում Մոսկվայի և Պետերբուրգի մի շարք գեղանկարիչներ ու գրաֆիկներ (Ի. Յա. Բիլիբին, Ա. Յա. Գոլովին, Ի. Է. Գրաբար, Կ. Ա. Կորովին, Բ. Մ. Կուստոդիև, Ն. Կ. Ռերիխ, Վ. Ա. Սերով): «Մ. ի.»-ի ցուցահանդեսներին մասնակցել են Մ. Ա. Վրուբելը, Ի. Ի. Լևիտանը, Մ. Վ. Նեստերովը, Մ. Սարյանը, Ե. Թադևոսյանը, Գ. Յակուլովը, ինչպես նաև մի շարք արտասահմանյան նկարիչներ: «Մ. ի.»-ի առաջատար ներկայացուցիչների աշխարհայացքային դրույթները հակադրվում էին իշխող դասակարգերի հակագեղագիտական սկզբունքներին, աղոտ կերպով կանխորոշում գալիք հասարակական ցնցումները: «Մ. ի.»-ի տեսաբանները առաջ էին քաշում իրականության էսթետիզացիայի սկզբունքը՝ արվեստը համարելով կյանքը վերափոխող կարևոր գործոն: Նրանք «մաքուր» և «ազատ» արվեստի կողմնակիցներ էին, մերժում էին ինչպես ակադեմիզմը, այնպես էլ *պերեդվիժնիկների* արվեստը, չնայած ընդունում էին վերջինիս պատմական նշանակությունը: Ինչպես և արմ. եվրոպական «մոդեռն» ոճը, «Մ. ի.»-ի նկարիչների ստեղծագործության կերպարային կառույցը ձևավորվել է *սիմվոլիզմի* պոետիկայի, առավել լայն՝ *նեոռոմանտիզմի* հիմքի վրա: «Մ. ի.» մի շարք անդամներին բնորոշ են նեոկլասիցիստական միտումները (Բակստ, Սերով, Դոբուժինսկի): «Մ. ի.» վարպետների ոճավորված ստեղծագործությունները կառուցվում էին արվեստների համադրման (տես «*Մոդեռն*») սկզբունքով և առավելապես իրացվում գրքի և թատրոնի, մասամբ՝ ինտերիերի ձևավորման բնագավառներում, ինչպես նաև գեղանկարչությունում և գրաֆիկայում: XX դ. I տասնամյակի 2-րդ կեսին «Մ. ի.» առաջատար նկարիչների հայացքներում նկատելի փոփոխություն է կատարվում: 1905—07-ի հեղափոխության շրջանում նրանցից ոմանք (Դոբուժինսկի, Լանսերե, Սերով) հանդես են գալիս որպես քաղաքական սատիրայի վարպետներ: Նրանք հեռանում են առավել ձախ հոսանքներից, ակտիվացնում իրենց թատերական գործունեությունը, ժամանակակից ռուս. արվեստը պրոպագանդում արտասահմանում: 1900—1910-ական թթ. 2-րդ կեսին արտասահմանում, Դյագիլևի ղեկավարությամբ, կազմակերպվում են ռուս. թատերաշրջաններ և ռուս. բալետի բեմադրություններ, որոնք ձևավորում էին «Մ. ի.»-ի անդամները: 1917-ից հետո «Մ. ի»-ի որոշ ներկայացուցիչներ (Բենուա, Գրաբար) ակտիվ գործունեություն են ծավալել թանգարանային-կազմակերպչական և վերականգնման բնագավառներում:

Գրկ. Бенуа А. Н., Возникновение «Мира искусства», Л., 1928; Гусарова А. П., «Мир искусства», Л., 1972.

**ՄԻՐ ՍԵԻԴ ԱԼԻ**, XVI դ. մանրանկարիչ, *Թավրիզի մանրանկարչության դպրոցի* ներկայացուցիչ: Սովորել է հոր՝ գեղա-

նկարիչ Միր Մուսսավիրի և Բեհզադի մոտ: Թավրիզում զարդանկարած ստեղծագործություններին (Նիզամու «Խամսեի» նկարազարդումները, ձեռագիրը թվագրված է՝ 1539—43, Բրիտ. թանգարան, Լոնդոն) բնորոշ են բազմաֆիգուր կոմպոզիցիաները, գունաբծերի հնչուն ներդաշնակությունը: 1555-ից Մ. Ս. Ա. ապրել է Հնդկաստանում, ուր դարձել է պալատական առաջատար նկարիչ և մողոլյան մանրանկարչության դպրոցի հիմնադիրներից: Այս շրջանի հանրահայտ ստեղծագործություններից է «Խամզա-նամե» (1564—79, նկարազարդումները գտնըվում են ԱՄՆ-ի, Շվեյցարիայի և այլ երկըրների մասնավոր հավաքածուներում) ձեռագրի նկարազարդումները:

*Գրկ.* [Г р е к Т. В.], Индийские миниатюры 16—18 вв., М., 1971, с. 7—9.

**ՄԻՐԱ** 0 Կետի (Զ ա ր մ ա ն ա լ ի), հայտնի առաջին *փոփոխական աստղը*: Մ-ի պայծառությունը փոխվում է 2-ից մինչև 10 *աստղային մեծության* սահմաններում՝ միջին հաշվով 330 օր պարբերությամբ: Տրամագիծը մոտ 500 մլն *կմ* է, հեռավորությունը Արեգակից՝ 77 *պս*:

**ՄԻՐԱԲԻԼԻՏ** (< լատ. mirabilis — զարմանահրաշ, անվանումը տվել է գերմանացի քիմիկոս Ի. Ռ. *Գլաուբերը*), գ լ ա ու բ ե ր յ ա ն ա ղ, միներալ սուլֆատների դասից: Քիմ. բաղադրությունը՝ $Na_2[SO_4]\cdot 10H_2O$: Պարունակում է 19,24 % $Na_2O$, 24,85% $SO_3$, 55,91% $H_2O$: Բյուրեղագիտական համակարգը մոնոկլինային է: Առաջացնում է կարճ պրիզմատիկ կամ ասեղնաձև բյուրեղներ, նաև հատիկավոր, փոշենման ագրեգատներ և մանրաբյուրեղ կեղևիկներ: Հեշտությամբ լուծվում է ջըրում, լուծույթն ունի դառնաղի համ: Անգույն է, սպիտակ: Փայլը՝ ապակու: Կարծրությունը՝ 1,5—2, խտությունը՝ 1490 *կգ/մ³*: Մ. աղային լճերի, ծանծաղ ծոցերի և տաք աղբյուրների տիպիկ քեմոգեն արգասիք է: Օգտագործվում է հիմնականում քիմ. արդյունաբերության բնագավառում սոդայի և կծու նատրիումի ստացման համար, ինչպես նաև բժշկության մեջ՝ որպես լուծողական:

**ՄԻՐԱԲՈ** (Mirabeau) Օնորե Գաբրիել Ռիքետի (1749—1791), Ֆրանսիական մեծ հեղափոխության գործիչ, կոմս: 1789-ին ընտրվել է *Գլխավոր շտատների* դեպուտատ (Մարսելի և Էքսի 3-րդ դասից): Օժտված էր հռետորական մեծ ձիրքով, իր ճառերում մերկացրել է ֆեոդ. միապետությունը, որով ձեռք է բերել լայն ժողովրդականություն: Հեղափոխության մեջ ժող. զանգվածների դերի մեծացումով Մ. աստիճանաբար անցել է պահպանողականների կողմը և դարձել է խոշոր բուրժուազիայի (որը ձգտում էր կասեցնել հեղափոխության զարգացումը) պարագլուխ: Հանդես գալով արքունիքը մերկացնող ճառերով՝ Մ. միաժամանակ գաղտնի համաձայնագիր է կնքել արքունիքի հետ (ստանալով մեծ հատուցում) և դարձել նրա գաղտնի գործակալը: *Ժ. Մարատը*, Մ. *Ռոբեսպիերը* և ուրիշ հեղափոխականներ, կռահելով Մ-ի դավաճանությունը, խիստ ելույթներ են ունեցել նրա դեմ: Միայն միապետության կործանումից (1792-ի օգոստ. 10) հետո են գտնվել Մ-ի դավաճանությունը հաստատող փաստաթղթեր: Մ-ի աճյունը, որ սկզբում ամփոփված էր Պանթեոնում, տեղափոխվել է հանցագործների գերեզմանատուն (Սեն-Մարսո): *Հ. Լիլոյան*

**ՄԻՐԱԺ** (ֆրանս. mirage), ո ղ ա տ ե ս ի լ, օպտիկական երևույթ մթնոլորտում, երբ հեռավոր առարկայի (կամ երկնքի հատվածի) հետ երևում է նաև նրա կեղծ պատկերը: Եթե առարկան գտնվում է հորիզոնից դուրս, երևում է միայն նրա կեղծ պատկերը: Առաջանում է մթնոլորտում առարկայից եկող լույսի ճառագայթների լրիվ ներքին անդրադարձման հետևանքով, որը պայմանավորված է ուղղաձիգ գծով օդի խտության արտասովոր բաշխմամբ: Տեղի է ունենում չոր կլիմայական պայմաններում, հատկապես ավազային անապատներում (երբեմն նաև ցուրտ երկրներում):



Միրաժի առաջացման սխեմա

Օդի երկրամերձ շերտի գերսառեցման՝ օդի ջերմաստիճանի ինվերսիայի ժամանակ առաջ է գալիս վերին Մ. (նկ. *ա*), իսկ գերտաքացման և ըստ բարձրության օդի ջերմաստիճանի ուղղաձիգ մեծ գրադիենտի դեպքում՝ ստորին Մ. (նկ. *բ*): Նման դեպքերում երկնքի կեղծ պատկերը ցամաքի (հիմնականում՝ ճանապարհների) վրա ստեղծում է ջրի պատրանք: Կողմնային Մ. նկատվում է գերտաքացած ժայռերի կամ պատերի մոտ:

**ՄԻՐԱԽՈՐՅԱՆ** Լևոն Մանվելի [17.11. 1895, Ռոման (Ռումինիա)—8.8.1978, Բուխարեստ], ռումինահայ նյարդահոգեբույժ, պարահոգեբան: Մ. *Միրախորյանի* որդին: Բժշկ. գիտ. դ-ր (1925), պրոֆեսոր (1930): 1922-ին ավարտել է Կլուժի համալսարանի բժշկ. ֆակուլտետը, եղել տեղի նյարդային հիվանդությունների կլինիկայի պրոֆեսոր: 1926-ին Կլուժում հիմնել է Հոգեբանության և պարահոգեբանության ռում. ազգային ընկերություն, որի նախագահն է եղել մինչև 1944-ը: Գիտական աշխատանքները վերաբերում են հեռազգայության, ներշնչման, հիպնոսի, հեռաանզգայացման և կատալեպսիայի երևույթների ուսումնասիրություններին, դրանց մեթոդներով նյարդահոգեկան և մի շարք այլ հիվանդությունների ախտորոշման ու բուժման հարցերին: Եղել է արտասահմանյան (Փարիզ, Լոնդոն ևն) հոգեբանական և պարահոգեբանական ընկերությունների անդամ:

**ՄԻՐԱԽՈՐՅԱՆ** Մանուել (1856, Վան — 28.6.1934, Բուխարեստ), ազգագրագետ, մանկավարժ: Սովորել է Վանի Ս. Թարգմանչաց, Վարագի Ժառանգավորաց, Կ. Պոլսի «Առաքել, Նուպար և Շահնազարյան» վարժարաններում: Մկրտիչ Ա Վանեցու (Խրիմյան Մկրտիչ) պատրիարքության ժամանակ (1869—73) եղել է նրա անձնական քարտուղարը: Դասավանդել է Կ. Պոլսի և Վանի դպրոցներում: XIX դ. վերջին հաստատվել է Ռումինիայում, Ֆոկշան և Ռոման քաղաքներում ծավալած իր մանկավարժական գործունեությամբ նպաստել է ռումինահայ կյանքի աշխուժացմանը: Աշխատակցել է Կ. Պոլսի «Մասիս», «Արևելք», «Երկրագունտ», Մարսելի «Արմենիա», «Հայ սիրտ» ևն պարբերականների: 1882-ին ուղևորություն է կատարել Ղրիմում, ուսումնասիրել տեղի հայերի ազգագրությունը և հասարակական կյանքը, սակայն գրած մենագրության ձեռագիրը բռնագրավել է թուրք. կառավարությունը: 1883-ին Արևմտյան Հայաստանի նահանգներում կատարած ուղեգրական, ազգագրական, վիճակագրական, պատմագրական ուսումնասիրությունը զետեղել է «Նկարագրական ուղևորություն...» (մաս 1—3, 1884—85) գրքում: Աշխատությունը ուշագրավ տեղեկություններ է պարունակում Արևմտյան Հայաստանի բնակավայրերի, բնակչության թվի, զբաղմունքի, ազգային տեղաբաշխման, վանքերի, եկեղեցիների, խաչքարերի, ձեռագրերի ևնի մասին: Մ-ի մի շարք գործեր անտիպ են: *Ս. Քոլանջյան*


Մ. Միրախորյան

**ՄԻՐԱՂՅԱՆ** Գեդեոն Բարսեղի [28.6. 1859, Թիֆլիս —27.1.1919, Թիֆլիս], հայ դերասան և մանկավարժ: 1887-ից դասավանդել է Հավլաբարի (Թիֆլիս) ծխական, Ներսիսյան, Արիեստավորաց դըպ-


Գ. Մ ի ր ա ղ յ ա ն ը Իսայու դերում (Սունդուկյանի «Խաթաբալա»)

Թույրը՝ սև-խայտաճամուկ: Սեռահասուն վարազների կենդանի զանգվածը՝ 230—320, մերուններինը 200—230 *կգ* է: Պտղատվությունը 10—11 (լավագույնները՝ 22) խոճկոր է: Խոզերը պահանջկոտ չեն կերի նկատմամբ, լավ են օգտագործում արոտը և արագ բտվում: Վաղահաս են: 6—7 ամսական մատղաշների կենդանի զանգվածը մինչև 100 *կգ* է, 1 *կգ* քաշաճին ծախսվում է 4,2—4,5 կերային միավոր: Բտված խոզերի մսեղիքի զանգվածում միսը կազմում է միջին հաշվով 49—54, իսկ ճարպը՝ 37—41%: Բուծվում է Ուկր. ՍՍՀ-ում, ՌՍՖՍՀ հվ. մարզերում:

**ՄԻՐԶԱ ՄԵԼՔՈՒՄ ԽԱՆ**, Մալքոմ Խան (Մելքումյան Հովսեփ Հակոբի) (1833—1906), հայազգի իրանական պետական գործիչ, դիվանագետ, լուսավորիչ, հրապարակախոս, գրող: Ծնվել է Նոր Ջուղայում: Սկզբնական կրթությունն ստացել է Թեհրանում, ապա սովորել է Փարիզում՝ Մուրադյան վարժարանում և պոլիտեխնիկ ուսումնարանում: Փարիզի համալսարանի իրավաբանական ֆակուլտետն ավարտելուց հետո վերադարձել է Թեհրան, ուր հիմնել է կոլեջ («Արվեստների տուն»), դասավանդել է բնական ու հասարակական գիտություններ: 1851-ին նշանակվել է պետ. թարգման: 1856—1857-ին պարսկ. պատվիրակության կազմում Փարիզում մասնակցել է Մեծ Բրիտանիայի հետ հաշտության պայմանագրի


Միրզա Մելքում Խան

կնքմանը: Իրան վերադառնալով 1858-ին հիմնել է «Ֆարամուշխանէ» («Մոռացության տուն») ընկերությունը (որը փաստորեն քաղ. ակումբ էր), ուր ընդգրկվել են ժամանակի առաջադեմ մտածողներ: Ընկերությունը պրոպագանդել է Իրանը եվրոպական ձևով բարեփոխելու, ինչպես նաև բուրժուա-դեմոկրատական հեղափոխություն նախապատրաստելու Մ. Մ. խ-ի ծրագրերը: 1858-ին նշանակվել է պարսկ. դեսպանատան խորհրդական Ֆրանսիայում (այդ ժամանակ էլ ընտրվել է ֆրանս. Արևելյան ընկերության պատվավոր անդամ): 1862-ին շահի հրամանով «Ֆարամուշխանէ»-ն ցրել են, իսկ Մ. Մ. խ-ին ձերբակալել և աքսորել են երկրից: Սակայն շուտով հրավիրվել է և աշխատանքի նշանակվել Կ. Պոլսի պարսկ. դեսպանատանը, ուր պաշտոնավարել է (ընդմիջումներով, 1871-ին Պարսկաստանի արտմինիստրության խորհրդական էր) մինչև 1872-ը, ծավալել հրապարակախոսական լայն գործունեություն, թուրք. մամուլում հանդես եկել քաղ., տնտեսագիտական հոդվածներով, պարսկերենի ռեֆորմի հարցերով ևն: Իր գրական, քաղ., հրապարակախոսական աշխատանքը շարունակել է Լոնդոնում, ուր 1873-ին նշանակվել է Պարսկաստանի դեսպան Մեծ Բրիտանիայում: 1878-ին մասնակցել է Բեռլինի կոնգրեսին, պաշտպանել Պարսկաստանի շահերը ընդդեմ Թուրքիայի: Այդ ծառայության համար շահը Մ. Մ. խ-ին շնորհել է «նազիմ էդ-դոուլե» («մեծ դեսպան»), «միրզա» («իշխան») տիտղոսները և նշանակել (բացի Անգլիայից) նաև Պարսկաստանի դեսպան Գերմանիայում:

1890—93-ին Լոնդոնում Մ. Մ. խ. տպագրել է «Կանուն» («Օրենք») պարսկ. պարբերականը (լույս է տեսել 42 համար), որը կարևոր դեր է խաղացել Պարսկաստանի հասարակական-քաղ. մտքի զարգացման գործում: Մ. Մ. խ. պարսկ. նոր գրականության ստեղծողներից է, գեղարվեստական գրականության մեջ ներմուծել է ժող. խոսակցական լեզուն, հիմք դրել սոցիալական դրամատուրգիային: Իր կատակերգություններում բացահայտել և ծաղրել է երկրում տիրող չարաշահումները, կաշառակերությունն ու անօրինականությունները: 1889-ին Մ. Մ. խ. հեռացվել է պետ. ծառայությունից, բայց 1899-ին նորից նշանակվել է Պարսկաստանի դեսպանորդ Հռոմում: Մահացել է Շվեյցարիայում:

Պարսկ. պատմագիտությունը բարձր գնահատելով Մ. Մ. խ-ին՝ նրան համեմատել է ֆրանս. լուսավորիչներ Վոլտերի, Ժան Ժակ Ռուսոյի հետ:

*Գրկ.* Ալպոյաճյան Ա., Պատմություն հայ գաղթականության, հ. 3, Կահիրե, 1961: Будагян А. А., К вопросу о пьесах Мирзы Мельком-хана, «ԼՀԳ», 1968, № 10; Algar H., Mirza Malkum khan, Los-Angeles, 1973.

*Գ. Հարությունյան*

**ՄԻՐԶԱ ՇԱՖԻ**, տես *Վազեհ Միրզա Շաֆի*:

**ՄԻՐԶԱ-ԱՎԱԳՅԱՆ** Հարություն Գրիգորի (1.11.1879, Բաքու —1938), հայ սովետական վիրաբույժ, պրոֆեսոր (1935): Հայաստանում ժամանակակից վիրաբուժության հիմնադիրներից: Սովորել է Կիևի համալսարանի ֆիզիկա-մաթեմատիկական, ապա բժշկ. ֆակուլտետում, որն ավարտել է 1908-ին: Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Կիևում ղեկավարել է հիվանդանոցների և լազարեթների վիրաբուժական բաժանմունքներ: 1930-ից աշխատել է Երևանի գինվորական հոսպիտալում, ապա ղեկավարել 2-րդ հիվանդանոցի վիրաբուժական բաժանմունքը: 1924-ին հրավիրվել է Երևանի համալսարան, որտեղ ստեղծել է տեղագրական անատոմիայի և օպերատիվ վիրաբուժության ամբիոններ: 1930-ին եղել է Երևանի բժշկ. ինստ-ի № 2 վիրաբուժության, 1933—36-ին՝ հոսպիտալային վիրաբուժության ամբիոնների վարիչ: Դեռևս 1920-ական թթ. Մ. կատարել է բարդ վիրահատություններ. ուղեղի կարծրաթաղանթի վիրահատում, կաթնագեղձի, լեղապարկի, փայծաղի հեռացում, քաղցկեղով ախտահարված ստամոքսի մասնահատում ևն: 1927-ին ՀՍՍՀ-ում առաջին անգամ վիրահատել է հրազենային վնասվածք ստացած տղամարդու սիրտը և սրտամկանից հեռացրել գնդակը: Աշխատանքները վերաբերում են արյան և ավշային, մակարուծական հիվանդությունների, սրտի վիրահատության օպերատիվ տեխնիկայի և արյան փոխներարկման հարցերին:

*Երկ.* Արյան փոխներարկում, Ե., 1934:

*Ս. Վարդանյան*


Հ. Գ. Միրզա-Ավագյան    Է. Հ. Միրզաբեկյան

**ՄԻՐԶԱԲԵԿՅԱՆ** Անահիտ Հովակիմի [ծն. 31.10.1899, գ. Բնունիս (այժմ՝ ՀՍՍՀ Սիսիանի շրջանում)], հայ սովետական մանրէաբան: Բժշկ. գիտ. դ-ր (1966), պրոֆեսոր (1967), ՀՍՍՀ վաստ. բժիշկ: ՍՄԿԿ անդամ 1944-ից: 1929-ին ավարտել է Երևանի համալսարանի բժշկ. ֆակուլտետը: 1930-ից աշխատել է սանիտարա-հիգիենայի ԳՀԻ-ում, 1936-ից՝ նույն ինստ-ի բակտերիալոգիական պատրաստուկների (ծաղիկի, կատաղության, որովայնային տիֆի վակցինաներ) բաժնի, 1938—1969-ին՝ մանրէաբանության լաբորատորիայի վարիչ: 1936-ից միաժամանակ աշխատել է Երևանի բժշկ. ինստ-ի մանրէաբանության ամբիոնում: Մ-ի աշխատանքները վերաբերում են ՀՍՍՀ-ում վարակիչ հիվանդությունների տարածվածության, պատճառագիտության, համաճարակային առանձնահատկությունների, ընթացքի, տարածման ուղիների, հարուցիչների կենսաբանական առանձնահատկությունների ուսումնասիրությանը, ժանտախտի և խոլերայի ախտորոշմանն ու բուժմանը:

**ՄԻՐԶԱԲԵԿՅԱՆ** Էմիլ Հայկի (12.12.1922, Երևան —16.9.1980, Մոսկվա, թաղված է Երևանում), հայ սովետական ռադիոֆիզիկոս, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1974): ՀՍՍՀ գիտ. և տեխ. վաստ. գործիչ (1974): ՍՄԿԿ անդամ 1944-ից: Ավարտել է Երևանի համալսարանը (1950): 1955—60-ին աշխատել է Բյուրականի աստղադիտարանում: 1960-ից եղել է ՀՍՍՀ ԳԱ ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ինստ-ի դիրեկտորը:

1974—76-ին եղել է ՀՍՍՀ ԳԱ ֆիզիկատեխնիկական գիտությունների և մեխանիկայի բաժանմունքի ակադեմիկոս-քարտուղար, 1976-ից՝ ՀՍՍՀ ԳԱ փոխպրեզիդենտ: Գիտական աշխատանքները նվիրված են գերբարձր հաճախականությունների (ԳԲՀ) տիրույթի գերզգայուն ռադիոընդունիչ համակարգերի ուսումնասիրությանը: Մ. ԳԲՀ ռադիոֆիզիկայի հիմնադիրն է ՀՍՍՀ-ում: Ստեղծել է էլեկտրամագնիսական ճառագայթման հետազոտման սարքերի նոր դաս, առաջինն է ուսումնասիրել Արեգակի ռադիոճառագայթման բևեռացումը: Մ-ի ուսումնասիրությունները գործնական լայն կիրառություն են գտել ժող. տնտեսության տարբեր բնագավառներում: Աշխատակիցների

հետ ստեղծած գերզգայուն ընդունիչ համակարգերը կիրառվում են տիեզերական հետազոտություններում: 1961-ին ընտրվել է Միջազգային աստղագիտական միության անդամ: ՀՍՍՀ X գումարման Գերագույն սովետի դեպուտատ: Պարգևատրըվել է Կարմիր աստղի, Հայրենական պատերազմի 2-րդ աստիճանի և Հոկտեմբերյան հեղափոխության շքանշաններով:

*Երկ.* Поляризационный радиометр на длину волны λ=3,2 см и его применение, տես Труды пятого совещания по вопросам космогонии, М., 1956 (соавторы Н. Л. Кайдановский и С. Э. Хайкин); Метод определения с высокой точностью координат космических источников радиоизлучения, «Բյուրականի աստղադիտարանի հաղորդումներ», 1959, պր. 27, Поляризационный метод измерения малых изменений разности фаз в диапазоне волн СВЧ, «Տեղեկագիր ՀՍՍՀ ԳԱ. ֆիզիկա», հ. 6, պր. 5, 1971 (соавтор Р. Н. Симонян).

*Ռ. Մարտիրոսյան*

**ՄԻՐԶԱԲԵԿՅԱՆ** Հայկ Հովհաննեսի (16.1. 1893, Շուշի — 24.2.1971, Երևան), հայ սովետական հիգիենիստ: Բժշկ. գիտ. դ-ր (1941), պրոֆեսոր (1942), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ: 1916-ին ավարտել է Կիևի համալսարանի բժշկ. ֆակուլտետը: 1923—1939-ին աշխատել է Հայաստանի ժողկոմիսարիատում, 1939-ից Երևանի սանիտարա-բակտերիալոգիական ԳՀԻ-ի աշխատանքի հիգիենայի լաբորատորիայի վարիչ: Այդ լաբորատորիայի բազայի վրա, Մ-ի նախաձեռնությամբ, 1959-ին հիմնադրվել է աշխատանքի հիգիենայի և պրոֆեսիոնալ հիվանդությունների ԳՀԻ (1971-ից ընդհանուր հիգիենայի և պրոֆեսիոնալ հիվանդությունների ԳՀԻ): 1942-ին կազմակերպել է բժշկ. ինստ-ի աշխատանքի հիգիենայի ամբիոնը և վարել այն մինչև 1970-ը: 1942—45-ին եղել է Երևանի զինվորական հոսպիտալի բժշկ. ծառայության պետ: Մ-ի գիտ. աշխատանքները վերաբերում են ՀՍՍՀ լեռնարդյունաբերության, տեքստիլ և քիմ. (սինթետիկ կաուչուկ, պոլիվինիլացետատ, ալյումին ևն) արտադրական ձեռնարկությունների աշխատանքի հիգիենայի, պրոֆեսիոնալ հիվանդությունների, արդ. թունաբանության հարցերի ուսումնասիրությանը և բանվորների աշխատանքային պայմանների բարելավման գործնական մեթոդների ու հիգիենային նորմաների մշակմանը: Մ. աշխատանքներ է տարել նաև ՀՍՍՀ արդ. ձեռնարկությունների նախագծերի սան. փորձաքննության, հիգիենային թերությունների կանխարգելման ուղղությամբ: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

**ՄԻՐԶԱԻ**, միրզեի, հայկական և, որոշ առումով, կովկասյան մենապար: Կատարել են միայն տարիքով կանայք՝ հարսանիքների ժամանակ: Մեր օրերում կատարվում է տարբեր առիթներով: Պարեղանակը մեկն է, չափը՝ $\frac{6}{8}$: Համարվում է ծանր (դանդաղ) մենապար:

*Ժ. Խաչատրյան*

**ՄԻՐԶԱԽԱՆՅԱՆ** Ժիրայր Ավետիսի (12.3. 1886, Վան — 29.5.1947, Երևան), հայ սովետական իրավաբան: ՍՄԿԿ անդամ 1921-ից: Ավարտել է Ստամբուլի համալսարանի իրավաբանության ֆակուլտետը: Աշխատել է սփյուռքահայ զաղթավայրերում (ԱՄՆ, Ֆրանսիա, Բուլղարիա), պրոպագանդել Սովետական Հայաստանի հաջողությունները: Ներգաղթելով հայրենիք (1921)՝ Մ. մի շարք պատասխանատու պաշտոններ է վարել ՀՍԽՀ դատական մարմիններում (1922—23-ին եղել է վճռաբեկ դատարանի նախագահ, 1925-ին՝ Գերագույն դատարանի դատախազ ևն): 1926-ին Մ. ՀՍԽՀ հողժողկոմի տեղակալն էր: 1934-ին նշանակվել է հանրապետության պետ. իրավարար: 1923—30-ին միաժամանակ դասախոսել է Երևանի համալսարանում՝ դասավանդելով աշխատանքային իրավունք և քաղաքատնտեսություն: Մ. եղել է ՀԿ(բ)Կ Կենտկոմի և ՀՍԽՀ Կենտգործկոմի անդամ:

**ՄԻՐԶԱԽԱՆՅԱՆ** (Միրզախանով) Իլարիոն Ավետի (ծն. 20.9.1887, Բաքու), ինժեներական ծառայության գեներալ-մայոր (1940): ՍՄԿԿ անդամ 1905-ից: Ավարտել է Պետերբուրգի տեխնոլոգիական ինստ-ը (1912): Մասնակցել է առաջին համաշխարհային պատերազմին: 1919-ի սեպտեմբերին մարտնչել է Դենիկինի սպիտակգվարդիական զորքերի դեմ՝ Տուլայի պաշտպանության համար: 1928-ից



Ի. Ա. Միրզախանյան

աշխատել է ռազմ. արդյունաբերության բնագավառում, որպես զինագնդացրային տրեստի պետի օգնական, զինագործարանի դիրեկտորի տեղակալ, ապա դիրեկտոր ևն: 1940-ի մայիսին նշանակվել է ՍՍՀՄ սպառազինության ժողկոմի տեղակալ, և այդ պաշտոնը վարել Հայրենական մեծ պատերազմի տարիներին: Պատերազմից հետո, մինչև զորացրվելը (1955), շարունակել է ծառայությունը ՍՍՀՄ զինված ուժերում: Պարգևատրվել է Լենինի, Կուտուզովի I և II աստիճանի, Կարմիր աստղի, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով:

**ՄԻՐԶԱՅԱՆ** Ջորայր Հովսեփի (1916, Թեհրան — 1964), հայ գրող, թարգմանիչ: Նախնական կրթությունն ստացել է Թեհրանի հայոց ազգային դպրոցում, ապա ավարտել է ամերիկյան կոլեջը: Աշխատակցել է սփյուռքահայ պարբերականների, հատկապես՝ Իրանահայ գրողների միության «Նոր էջ» հանդեսին: Հրատարակվել են Մ-ի «Թաց մայթը» (1957), «Բանաստեղծություններ և պատմվածքներ. Հատընտիր» (ետմահու, 1965) ժողովածուները և «Աբու-Ալի Սինա» (1954) ուսումնասիրությունը: Կատարել է թարգմանություններ Ռ. Թագորի, Օմար Խայամի, Ֆիրդուսու, Հաֆեզի, Ֆ. Դոստոևսկու, Մ. Տվենի և ուրիշների ստեղծագործություններից:

*Ս. Կուրտիկյան*

**ՄԻՐԶԱՅԱՆ** Հովսեփ (1868, Համադան — 1935, Թեհրան), իրանահայ պետական, մշակութային գործիչ, թարգմանիչ: Սովորել է Նոր Ջուղայի հայկ. դպրոցում: 1900-ից պաշտոնավարել է Իրանի ֆինանսների մինիստրությունում (1927-ից՝ լիազոր կառավարչի հատուկ օգնական): Ընտրըվել է Իրանի մեջլիսի պատգամավոր (1910—11, 1915, 1923): Տիրապետել է անգլերենին, ֆրանսերենին, պարսկերենին: Բնագրից թարգմանել է Ջ. Բայրոնի («Մովաենը», «Չայլդ Հարոլդ»), Հ. Լոնգֆելլոյի («Կյանքի սաղմոսը»), Վ. Սկոտի («Կղզիների լորդը», «Լճի լեդին»), Վ. Հյուգոյի («Նապոլեոն Երկրորդ») և այլոց ստեղծագործություններից, որոնք լույս են տեսել հայկ. պարբերականներում («Մուրճ», «Նոր հոսանք» ևն): Պարսկերենից կատարած թարգմանությունների մի մասը ամփոփել է Օմար Խայամի «Բաբա Թահեր և զանազան» (1923) ժողովածուում, որտեղ զետեղել է նաև առաջաբան-ուսումնասիրություն Օմար Խայամի ստեղծագործության մասին: Մ-ի թարգմանությամբ 1963-ին Թեհրանում լույս է տեսել Օմար Խայամի «Քառյակներ» ժողովածուն:

*Ջ. Միրզաբեկյան*

**ՄԻՐԶԱՅԱՆ** Միքայել Հովհաննեսի (21.8. 1888, Թիֆլիս — 26.11.1958, Երևան), հայ սովետական կոմպոզիտոր, խմբավար, մանկավարժ, երաժշտական-հասարակական գործիչ: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1939): 1908-ին ավարտել է Ներսիսյան դպրոցը: Շարունակել է ուսումը Թիֆլիսի երաժշտ. ուսումնարանում, ապա՝ կոնսերվատորիայում (Ի. Ի. Չերեպնինի դասարան): Գրել է գործիքային երկեր, ռոմանսներ, երգեր, խմբերգեր, քայլերգեր, մանկական երաժշտ. պատկերներ («Միտն ու սազը», «Ճպուռն ու մրջյունը», «Մկների ժողովը» ևն) և երգեր: Մ. հեղինակ է երգարանների («Դպրոցական երգարան», 1935) և երաժշտական գրագիտության ձեռնարկների (Նոտային գրագիտության դասագիրք, 1935, Երաժշտական գրագիտության և երգի ձեռնարկ, 1955): 1966-ին Երևանում հրատարակվել է Մ-ի երգերի և ռոմանսների ժողովածու (կազմ. Ռ. Աթայան և Է. Միրզոյան): Պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով:

*Գրկ.* Գրիգորյան Ք., Միքայել Միրզայան, Ե., 1969:

*Ա. Փահլևանյան*

**ՄԻՐԶԻԿ**, հայաբնակ գյուղ Ադրբեջանական ՍՍՀ Խանլարի շրջանում, շրջկենտրոնից 12 *կմ* հարավ-արևմուտք: Սովետական տնտեսությունն զբաղվում է խաղողագործությամբ: Ունի միջնակարգ դպրոց, գրադարան, կուլտուրայի տուն, կինո, կապի բաժանմունք, փոստ, բուժկայան, մանկապարտեզ: Գյուղում կա եկեղեցի (վերականգնվել է 1884-ին), Խանլարից Մ. տանող ճանապարհին, Գյանջաչայ գետի վրա կա կամուրջ (XII դ.):

**ՄԻՐԶՈՅԱՆ** Աշոտ Հովհաննեսի (ծն. 25.10. 1913, Թավրիզ), հայ սովետական թատերական նկարիչ: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1956): Պրոֆեսոր (1978): ՍՄԿԿ անդամ 1951-ից: 1938-ին ավարտել է Գեղանկարչության, քանդակագործության և ճարտարապետության համառուսաստանյան գեղարվեստի ակադեմիայի Լենինգրադի ինստ-ը: 1938—45-ին եղել է Երևանի պատանի հանդիսատեսի թատրոնի, 1948—63-ին՝ Երևանի օպերայի և բալետի

թատրոնի գլխավոր նկարիչը: 1963-ից դասավանդում է Երևանի գեղարվեստա-թատերական ինստ-ում (1963—77-ին արդ. էսթետիկայի ամբիոնի վարիչ): Ձևավորել է Վ. Շեքսպիրի «Ամառային գիշերվա երազը» (1940), Կ. Գոլդոնիի «Երկու տիրոջ ծառան» (1945) բեմադրությունները Երևանի պատանի հանդիսատեսի թատրոնում, Վերդիի «Ռիգոլետտո» (1940), «Օթելլո» (1942), Ա. Տիգրանյանի «Անուշ» (1950), «Դավիթ Բեկ» (1956), Հ. Ստեփանյանի «Հերոսուհին» (1950, ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1951), Պ. Ի. Չայկովսկու «Եվգենի Օնեգին» (1955), Տ. Չուխաճյանի «Արշակ Բ» (1956), Ա. Բաբաջանյանի «Արծվաբերդ» (1957) օպերաները, Ա. Խաչատրյանի «Սպարտակ» բալետը (1961) Երևանի օպերայի և բալետի թատրոնում: Պարգևատրըվել է «Պատվո նշան» շքանշանով:

**ՄԻՐԶՈՅԱՆ** Գարեգին Հովհաննեսի (ծն. 1902, Թիֆլիս), հայ սովետական նյարդախտաբան: Բժշկ. գիտ. դ-ր, պրոֆեսոր (1953), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1961): 1923-ին ավարտել է Երևանի համալսարանի բժշկ. ֆակուլտետը: 1931—38-ին աշխատել է բժշկ. ինստ-ի նյարդային հիվանդությունների ամբիոնում,1961—76-ին՝ ամբիոնի վարիչ, 1976-ից՝ գիտական խորհըրդատու: 1958—60-ին եղել է բժշկ. ինստ-ի կատարելագործման դասընթացների նյարդախտաբանության և նյարդավիրաբուժության ամբիոնի վարիչ: Հայրենական մեծ պատերազմի տարիներին Մ. Երևանի էվակոհոսպիտալի նյարդային հիվանդությունների բաժանմունքի վարիչն էր և ՀՍՍՀ էվակոհոսպիտալների գլխավոր նյարդախտաբանը: 1945-ին 2-րդ կլինիկական հիվանդանոցում Մ. կազմակերպել է նյարդային հիվանդությունների բաժանմունք:

Մ. հեղինակ է «Մայրամասային նյարդային համակարգի վնասվածքային ախտահարումը և բուժումը» (1948, ռուս.), «Ներվային հիվանդությունների համառոտ դասընթաց» (1965), «Նյարդային համակարգության ախտահարման և տեղադրական ախտորոշումը» (1973) և «Նյարդային հիվանդություններ» (1976) գրքերի: Մ. եղել է ՀՍՍՀ առողջապահության մինիստրության գլխավոր նյարդախտաբանը, նյարդախտաբանների և հոգեբույժների համամիութենական ընկերության վարչ. անդամ: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

**ՄԻՐԶՈՅԱՆ** Գուրգեն Լևոնի [12(25).1. 1911, Թիֆլիս—21.4.1975, Երևան], հայ քամանչահար, մանկավարժ, երաժշտական-հասարակական գործիչ: ՀՍՍՀ ժող. արտիստ (1967): ՍՄԿԿ անդամ 1944-ից: Սովորել է Հայարտան երաժշտական ստուդիայում (Ս. Օգանեզաշվիլու դասարան): Եղել է Հայաստանի արևելյան սիմֆոնիկ նվագախմբի, ռադիոկոմիտեի ժող. գործիքների անսամբլի կոնցերտմայստեր և մենակատար (1929—31), Հայֆիլհարմոնիայում ղեկավարել է ժող. գործիքների անսամբլ (1935—58): Դասավանդել է Երևանի կոնսերվատորիային կից (1933—1937) և Ռ. Մելիքյանի անվ. երաժշտական (1945—51) ուսումնարանների ժող. գործիքների բաժնում: Պարգևատրվել է «Պատվո նշան» 2 շքանշանով:

**ՄԻՐԶՈՅԱՆ** Գուրգեն Հովհաննեսի [20.5 (2.6).1892, Թիֆլիս—27.11.1976, Երևան], հայ սովետական կոմպոզիտոր, խմբավար, մանկավարժ: ՀՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1950): Սովորել է Ներսիսյան դպրոցում, աշակերտել Գ. Սյունուն: 1924-ին ավարտել է Թիֆլիսի կոնսերվատորիան, դասատուներ՝ Մ. Մ. Իպոլիտով-Իվանով (ստեղծագործություն), Ք. Ս. Քուշնարյան (պոլիֆոնիա): 1937—39-ին ղեկավարել է Հայֆիլհարմոնիայի ժող. գործիքների նվագախումբը, մասնակցել Մոսկվայում Հայ արվեստի և գրականության առաջին տասնօրյակին: 1941—43-ին եղել է Ռ. Մելիքյանի անվ. ուսումնարանի տեսական առարկաների դասատու, 1950—58-ին՝ նաև ուս. մասի վարիչ: Մ-ի նախաձեռնությամբ երաժշտ. ուսումնարանում կազմակերպվել է արլ. գործիքագիտության և գործիքավորման դասընթաց: Գրել է սիմֆոնիկ («Էսքիզ», «Սյուիտ», 1944), դաշնամուրային («Մանրապատումներ», 1947, «Պրելյուդներ», 1949) երկեր, լարային կվարտետ (1950), կոնցերտ թառի (1954), ֆանտազիա քամանչայի (1956), ստեղծագործություններ ժող. գործիքների նվագախմբի համար, երգեր, խմբերգեր: Պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով:

*Գրկ.* Թ ո ռ ջ յ ա ն Խ., Գուրգեն Միրզոյան, Ե., 1970:

**ՄԻՐԶՈՅԱՆ** Էդվարդ Միքայելի (ծն. 12.5. 1921, Գորի), հայ սովետական կոմպոզիտոր, մանկավարժ, երաժշտական-հասարակական գործիչ: ՍՍՀՄ ժող. արտիստ (1981): ՍՄԿԿ անդամ 1952-ից: 1941-ին ավարտել է Երևանի կոնսերվատորիան (Վ. Տալյանի ստեղծագործական դասարան): 1946—48-ին կատարելագործվել է Մոսկվայում՝ Հայաստանի կուլտուրայի տան երաժշտական ստուդիայում (Գ. Ի. Լիտինսկու, Ն. Ի. Պեյկոյի, Ն. Պ. Ռակովի մոտ): 1948-ից դասավանդում է Երևանի կոնսերվատորիայում (1965-ից՝ պրոֆեսոր, 1972-ից՝ ստեղծագործական ամբիոնի վարիչ): Աշակերտներից են՝ Զ. Տեր-Թադևոսյանը, Կ. Օրբելյանը, Ա. Տերտերյանը, Ս. Զաքարյանը, Խ. Ավետիսյանը, Ռ. Ամիրխանյանը, Լ. Չաուշյանը: 1956-ից Հայաստանի կոմպոզիտորների միության վարչության նախագահն է:

Մ-ի սկզբնական շրջանի ստեղծագործություններից մեջ առանձնանում են Ա. Իսահակյանի խոսքերով գրված ռոմանսները «Ասում են, թե...» (1939), «Երազ տեսա» (1941), «Հայրենիքն է կանչում» խմբերգը (1941): Սիմֆոնիկ նվագախմբի համար գրված «Հայրենական պատերազմի հերոսներին» պոեմը (1944), «Սիմֆոնիկ պարեր»-ը (1945), «Տոնական նախերգանք»-ը (1947) գույների հյութեղությամբ և վառ դինամիկայով մոտ են Ա. Խաչատրյանի երաժշտության ոճին: Մ-ի լարային կվարտետը (1947) հայ կամերային երաժշտության մեջ դրամատիկ բնույթի առաջին նշանակալի երկն է: Քաղաքացիական և հայրենասիրական շնչով են տոգորված Մ-ի կանտատները՝ «Հայաստան» (1948), «Տոնական» (1949), «Սովետական Հայաստան» (1950), «Կանտատ Լենինի մասին» (1950, համահեղինակ՝ Ա. Հարությունյան): Բարձր վարպետության և հոգեբանական խորության կնիք են կրում Մ-ի



Է. Մ. Միրզոյան

թավջութակի և դաշնամուրի սոնատը (1967) և, հատկապես, Սիմֆոնիան լարային նվագախմբի և լիտավրների համար (1962), որը միջազգային լայն ճանաչում է ստացել: Գրել է երաժշտություն կինոֆիլմերի համար («Երբ քեզ հետ են ընկերները», 1956, «Փլուզում», 1959, «Այսօր արևմուտ օր է», 1971, «Քաոս», 1973, «Հեղկոմի նախագահը», 1977, «Աքսորական № 011», 1978): ՀԿԿ Կենտկոմի անդամ 1964-ից: ՀՍՍՀ V—X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Պարգևատրվել է Լենինի, «Պատվո նշան», բուլղ. «Կիրիլ և Մեֆոդի» (1971) շքանշաններով:

*Գրկ.* Ա ր ա զ յ ա ն Թ. Մ., Էդվարդ Միրզոյան, Ե., 1963: Т е р - С и м о н я н М. П., Эдвард Мирзоян, М., 1969.

*Գ. Գյոդակյան*

**ՄԻՐԶՈՅԱՆ** Թերեզա Հայկի [ծն. 11.8. 1922, Ղարաքիլիսա (այժմ՝ Կիրովական)], հայ սովետական քանդակագործուհի: ՀՍՍՀ վաստ. նկարիչ (1967): 1946-ին ավարտել է Թբիլիսիի գեղարվեստի ակադեմիան: 1947-ից դասավանդում է Երևանի գեղարվեստա-թատերական ինստ-ում (1975-ից՝ քանդակագործության ամբիոնի վարիչ): Գործերից են՝ Հունան Ավետիսյանի կիսանդրին (բրոնզ, բազալտ, 1956, Երևան), Մայիսյան ապստամբության մասնակիցների հուշարձանը (Գ. Ահարոնյանի հետ, բրոնզ, բազալտ, 1960, Սիսիան), «Մանածագործուհի» մոնումենտալ քանդակը (ալյումին, բազալտ, 1964, Լենինական), «Սափորով աղջիկը» (բազալտ, 1962, Դիլիջանի մշակույթի պալատ) դեկորատիվ քանդակը, «Անուշ և Սարո» (կոփածո պղինձ, 1969, Հ. Թումանյանի տունթանգարան, Երևան), «Գթասրտություն» (բազալտ, 1970, Հայրենական պատերազմի թանգարան, Երևան) կոմպոզիցիաները: 1949-ից մասնակցում է հանրապետական, միութենական և միջազգային ցուցահանդեսների:

**ՄԻՐԶՈՅԱՆ** Լևոն Եսայու [18(30).11.1897, գ. Աշան (այժմ՝ Լեռնային Ղարաբաղի ԻՄ Մարտունու շրջանում)—1938], սովետական կուսակցական և պետական գործիչ: ՍՄԿԿ անդամ 1917-ից: Հեղափոխական գործունեության մեջ ընդգրկվել է Բաքվի գիմնազիայում սովորելիս (1912): 1917—1918-ին ագիտացիոն և կազմակերպական աշխատանք է տարել Բաքվի արհմիություններում, սովետներում և երիտասարդական կազմակերպություններում, ընտրըվել է բանվորների և զինվորների Բաքվի սովետի դեպուտատ: Բաքվի կոմունայի պարտությունից հետո բոլշևիկյան ընդհատակյա բյուրոյի անդամ էր: 1919-ի մայիսին ձերբակալվել և արտաքսվել է Բաքվից: 1920-ի սկզբին ընտրվել է Կովկաս-

յան երկրային կոմիտեի անդամ: Փետրվարին մասնակցել է Ադրբեջանի կոմունիստական կազմակերպությունների առաջին համագումարին, ընտրվել Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի կազմում: Սովետական կարգեր հաստատվելուց հետո՝ 1920-ի օգոստոսին Մ. ընտրվել է Ադրբեջանի արհմիությունների խորհրդի նախագահ: 1921—25-ին եղել է ԱԿԿ Բաքվի կոմիտեի քարտուղար: Կուսակցության XI համագումարի մի խումբ պատգամավորների հետ հանդիպել է Վ. Ի. Լենինին: 1925—29-ին ԱԿԿ ԿԿ առաջին քարտուղարն էր: 1929-ին ընտրվել է ՀամԿ(բ)Կ Պերմի օկրուգային կոմիտեի, ապա Ուրալի մարզկոմի քարտուղար, 1933-ից՝ կուսակցության Ղազախստանի երկրամասային կոմիտեի քարտուղար: 1937-ից Մ. Ղազախստանի կոմկուսի ԿԿ առաջին քարտուղարն էր: Եղել է ՍՄԿԿ X, XI, XIV—XVII համագումարների պատգամավոր, XV—XVI համագումարներում ընտրվել է ՍՄԿԿ ԿԿ անդամության թեկնածու, XVII-ում՝ ԿԿ անդամ: ՍՍՀՄ Կենտգործկոմի անդամ էր: Պարգևատրվել է Լենինի շքանշանով:

*Գրկ.* Սիմոնյան Ռ. Ա., Փոթորկածինը, Ե., 1979: Ляхов В. И., Левон Исаевич Мирзоян, Вопросы истории КПСС, 1965, № 1, с. 101. *Հ. Օհանյան*

**ՄԻՐԶՈՅԱՆ** Լյուդվիկ Վասիլի (ծն. 1.5. 1923, Երևան), հայ սովետական աստղագետ: Ֆիզմաթ գիտ. դ-ր (1968), պրոֆեսոր (1970), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1974): Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին (1942—45): Ավարտել է Երևանի համալսարանի ֆիզմաթ ֆակուլտետը (1947): 1949-ից դասավանդում է Երևանի համալսարանում: 1959-ից Բյուրականի աստղադիտարանի դիրեկտորի տեղակալն է, 1965-ից՝ աստղերի ու միգամածությունների ֆիզիկայի բաժնի վարիչը: Աշխատանքները վերաբերում են աստղերի ֆիզիկային ու էվոլյուցիային: Կարևոր արդյունքներ է ստացել աստղասփյուռների ընդարձակման ու դրանցում գտնվող աստղերի անկայունության զարգացման վերաբերյալ: «Գիտելիք» ընկերության նախագահության անդամ է, աստղագիտության և տիեզերագնացության գիտամեթոդական խորհրդի նախագահ: «Աստղաֆիզիկա» համամիութենական պարբերականի գլխավոր խմբագրի տեղակալ (1965): ՍՍՀՄ ԳԱ աստղագիտական խորհրդի անդամ (1970), Միջազգային աստղագիտական միության և նրա մասնագիտական հանձնաժողովների անդամ (1958), Աստղագնացության միջազգային ակադեմիայի թղթակից անդամ (1970), Փարիզի աստղաֆիզիկայի ինստ-ի անդամ-խորհրդական (1970—75): Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

*Երկ.* Բռնկվող աստղեր, Ե., 1973: Космогония звезд и галактик, в кн.: Проблемы современной космогонии, М., 1972; Нестационарность и эволюция звезд, Е., 1981.

**ՄԻՐԶՈՅԱՆ** Սամվել Ալեքսանի (ծն. 1.9. 1918, Գորիս), հայ սովետական կենսաքան-միջատաբան: Կենսբ. գիտ. դ-ր (1973): ՍՄԿԿ անդամ 1942-ից: Ավարտել է Երևանի համալսարանը (1941): 1960—64-ին եղել է ՀՍՍՀ երկրագործության ԳՀԻ-ի բույսերի պաշտպանության բաժնի սահ-


Լ. Վ. Միրզոյան


Ս. Հ. Միրզոյան

զանզման ու կանխագուշակման սեկտորի վարիչ, 1964-ից՝ ՀՍՍՀ բույսերի պաշտպանության ԳՀԻ-ի անտառի պաշտպանության լաբորատորիայի վարիչ: Գիտական աշխատանքները վերաբերում են անտառային միջատաբանության, անտառի պաշտպանության, օգտակար միջատների պահպանության հարցերին: Բացահայտել է ՀՍՍՀ անտառների, տնկարանների և պուրակների դենդրոֆիլ միջատների տեսակակազմը, որոշել դրանց տնտ. նշանակությունը, մշակել վնասատուների դեմ պայքարի միջոցառումներ, կազմել ՀՍՍՀ կենդանաաշխարհագրական ու շրջանացման քարտեզ:

*Երկ.* Անտառային ծառերի վնասատուները և պայքարը նրանց դեմ, Ե., 1954 (համահեղինակ՝ Մելիք-Նուբարյան Ա.): Дендрофильные насекомые лесов и парков Армении, Е., 1977.

**ՄԻՐԶՈՅԱՆ** Սիմոն Հակոբի (ծն. 6.1.1910, Թիֆլիս), հայ սովետական դեղաբան: Հայաստանում *դեղաբանության* հիմնադիրներից: ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ (1960), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1961): ՍՄԿԿ անդամ 1943-ից: 1931-ին ավարտել է Երևանի բժշկ. ինստ-ի բուժական ֆակուլտետը, աշխատել դեղաբանության ամբիոնում (1936-ից վարիչն է): 1950-ին կուրորտոլոգիայի և ֆիզիկական մեթոդնե րով բուժման ԳՀԻ-ում կազմակերպել է փորձառական կուրորտաբանության բաժին: 1971—78-ին եղել է ՀՍՍՀ առողջապահության մինիստրության գիտական բժշկ. խորհրդի նախագահ:

Մ-ի աշխատանքները հիմնականում վերաբերում են բնական և սինթետիկ ծագման նոր դեղամիջոցների հայտնաբերման, դեղաբանական և բալնեոլոգիական գործոնների ազդեցության մեխանիզմների լուսաբանման հարցերին, ֆիզիոլոգիայի ու դեղաբանության փորձառական հետազոտման մեթոդների մշակմանը: Մ. ուսումնասիրել է օրգանիզմ դեղանյութեր ներմուծելիս տարբեր օրգանների ու համակարգերի վրա ներքին ընկալիչ (ինտերոռեցեպտորային) ազդակների դերը օրգանիզմի ռեակցիաների փոփոխման գործում: Մշակել է դեղանյութերի ազդեցության ռեֆլեկտոր վերլուծության մեթոդ: Մ-ի ղեկավարությամբ (բուսաբանների և քիմիկոսների հետ) հետազոտվել են ՀՍՍՀ բուսաշխարհում ալկալոիդներ, գլիկոզիդներ, ներկող և դաբաղող նյութեր պարունակող դեղաբույսերը (արդյունքներն ամփոփված են «Հայաստանի դեղաբույսերը և նրանց բուժիչ պրեպարատները» ժողովածուում, 1949), հայտնաբերվել է ալկալոիդներ պարունակող 65 բույս, ըստացվել «արպագածին» նոր ալկալոիդը: Ստացվել են արյան շրջանառությունը և շնչառությունը խթանող, ճնշումն իջեցնող, միզամուղ, արյունահոսությունը դադարեցնող պատրաստուկներ, հայտնաբերվել լեղագոյացման ու լեղարտադրման պրոցեսի վրա ազդող դեղաբույսեր, բուսական անտիբիոտիկներ, հետազոտվել են ստամոքս-աղիքային համակարգի հյութազատական և շարժողական ֆունկցիաների և ստամոքսի տարբեր ընկալիչ գոտիների վրա գանգլերոնի, քվատերոնի, արփենալի ազդեցության մեխանիզմները և ստացել հակախոցային «դիմեկումարոն» պատրաստուկը: Մ. հաստատել է ուղեղի ֆիզիոլոգիապես ակտիվ կենսածին նյութերի (օրինակ՝ գամմաամինակարագաթթվի) կարգավորող ազդեցությունը ուղեղային արյան շրջանառության վրա, մշակել վերջինիս էնդոգեն (ներքնածին) կարգավորման ինքնատիպ կոնցեպցիա:

Մ. ՍՍՀՄ ԳԱ ֆիզիոլոգիայի բաժնի բյուրոյին կից դեղաբանության բաժանմունքի, դեղաբանության համամիութենական ընկերության կենտրոնական վարչության նախագահության, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի՝ պետ. մրցանակներ շնորհող հանձնաժողովի անդամ է, ՀՍՍՀ Դեղաբանների ընկերության վարչության նախագահը, ՀՍՍՀ ԳԱ կենսաբանական բաժանմունքի ակադեմիկոս-քարտուղարի տեղակալ:

Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի, «Պատվո նշան» շքանշաններով: 1976-ին Մ. արժանացել է ՀՍՍՀ ԳԱ Նախագահության վաստակագրի:

*Երկ.* О роли ГАМК и ее превращений в регуляции мозгового кровотока, «Вопросы биохимии мозга», т. 13, 1978 (соавторы Акопян В. П., Топчян А. В.); Comparative Effects of Prostaglandins on the Embryonic Myocardium, «Acta Biologica et medica Germanica», B. 37, 1978 (համահեղինակ՝ Boroyan R G.); The Role of Tissue Sulphydric Groups in the Production of Different Impulse Discharge from Interocepters, «Essayson Physiological Evolution», Oxford—London, 1965.

**ՄԻՐԶՈՅԱՆ** Վարդան Միրզոյի [10.7(22.7). 1877, գ. Երնջակ (այժմ՝ Նախիջևանի ԻՍՍՀ-ում)—24.1.1968, Երևան], հայ սովետական դերասան, մանկավարժ, թատերական գործիչ: ՀՍՍՀ ժող. արտիստ (1949): Բեմ է բարձրացել Թիֆլիսում, 1897-ին: Խաղացել է Հ. Աբելյանի, Սիրանույշի և այլոց խմբերում, կատարել դրամատիկական և բնութագրական դերեր (Վասիլ Լեկաշե, Լ. Շանթի «Կայսր», Գրոսման, Մ. Յուշկևիչի «Թագավոր», Լուկա, Գորկու «Հատակում»): 1919-ին Երևանում բացել է Դրամատիկական ստուդիա: Աշխատել է Ալեքսանդրապոլի, Բաքվի, Թիֆլիսի թատրոններում, 1929—52-ին Երևանի պատանի հանդիսատեսի թատրոնում (Բազազ Արտեմ, «Գիքոր», ըստ Թումանյանի, Սամսոն աղա, «Կրակե օղակում», ըստ Վ. Անանյանի, Ֆիլիպ արքա, «Թիլ Ուլենշպիգել», ըստ Շ. դը Կոստերի): 1929-ից դասավանդել է Երևանի թատերական ուսումնարանում, տեխնիկումում և ինստ-ում: Նկարահանվել է կինոյում: 1966-ին հրատարակել է «Թատերական օրագրեր»-ը:

*Բ. Հովակիմյան*

**ՄԻՐԻՄԱՆՅԱՆ** Գևորգ, Եգոր (1831, Թիֆլիս—1853), հայ բանաստեղծ, մշակութային գործիչ: Մասնագիտությամբ տնտեսագետ: Սովորել է Լազարյան ճեմարանում, ապա Դորպատի համալսարանում (1849—53)՝ Ռ. և Ք. Պատկանյանների, Գ. Դոդոխյանի հետ: Ուսումնառության տարիներից զբաղվել է գրականությամբ, ձեռագիր վիճակում ուսանողության շրջանում տարածել է Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպը:

Գրել է երգեր, որոնցից լայն ճանաչում է գտել «Հայոց աղջիկներ, ձեր հոգուն մատաղ» երգը:

**ՄԻՐԻՄԱՆՅԱՆ** Խաչիկ Պողոսի [14.11. 1899, Նոր Բայազետ (այժմ՝ ք. Կամո)—15.10.1979, Երևան], հայ սովետական հողագետ: Գյուղատնտ. գիտ. դ-ր (1940), պրոֆեսոր (1940), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1959): Ավարտել է Մոսկվայի Կ. Ա. Տիմիրյազևի անվ. գյուղատնտ. ակադեմիան (1928): 1930-ից դասավանդել է Հայկ. գյուղատնտ. ինստ-ում, 1940—43-ին և 1954—56-ին եղել է նույնի, 1949—51-ին՝


Խ. Պ. Միրիմանյան

ՀՍՍՀ ԳԱ պտղաբուծության ինստ-ի դիրեկտոր, 1958-ին՝ ՀՍՍՀ բնության պահպանության ընկերության, 1958—75-ին՝ ՀՍՍՀ ԳԱ բնության պահպանության գիտխորհրդի նախագահ, 1959—76-ին՝ «Հայաստանի բնությունը» ամսագրի գլխավոր խմբագիր, Լեռնային երկրների բնության պահպանության միջազգային կոմիտեի նախագահ (1969—75) և պատվավոր խորհրդատու (1975—79), ՅՈՒՆԵՍԿՕ-ի կոնսուլտատիվ կոմիտեի անդամ:

Մ-ի աշխատանքները վերաբերում են ՀՍՍՀ հողերի ուսումնասիրման, դասակարգման, նոր հողերի իրացման, աղուտների, կիսաանապատային, ճահճային հողերի բարելավման, բնության պահպանության հարցերին: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի և «Պատվո նշան» շքանշաններով:

*Գրկ.* Мириманян Хачатур Погосович, (библиография), М.—Е., 1975.

**ՄԻՐԻՆՈՅ**, գյուղ Տրապիզոնի վիլայեթի Սյուրմենե գավառակում: 1914-ին ուներ 35 տուն հայ բնակիչ (մահմեդականացած), որոնք պահպանել էին հայկ. սովորությունները, համշենահայ բարբառը:

*Բ. Թոռլաքյան*

**ՄԻՐԻՊԱՐ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Բուլանըխի գավառում: 1909-ին ուներ 30 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է աքսորի ճանապարհին:

**ՄԻՐԻՋԱՆՅԱՆ** Լևոն Վարդանի (ծն. 22.1. 1933, Երևան), հայ սովետական բանաստեղծ, գրականագետ: ՍՄԿԿ անդամ 1964-ից: Ավարտել է Երևանի համալսարանի բանասիրական ֆակուլտետը (1955): 1953—59-ին աշխատել է «Գրական թերթ»-ի և «Երևան»-ի խմբագրություններում: 1962—66-ին եղել է ՀՍՍՀ ԳԱ Մ. Աբեղյանի անվ. գրականության ինստ-ի գիտ. քարտուղար, 1967—1975-ին՝ «Հայաստան» հրատարակչության գեղարվեստական գրականության խմբագրության վարիչ: 1975-ից ՀՍՍՀ գրքասերների ընկերության հանրապետական վարչության նախագահի առաջին տեղակալն է: Լույս են տեսել նրա «Այգետնկողներ» (1958), «Ծովի կարոտ» (1965), «Դեպի ծով» (1971) բանաստեղծությունների ժողովածուները, «Կանաչ ապրիլ» (1970, պոեմ), «Հայ բանաստեղծության ակունքները» (1977) և «Վերընթերցելով Մովսես Խորենացու «Հայոց պատմությունը» (1979) աշխատությունները: Մ-ի Կոմիտասին նվիրված «Երգի Հովիվը» (1969) պոեմն արժանացել է Թեքեյան մշակութային միության առաջին մրցանակին, թարգմանվել և առանձին գրքով լույս տեսել արաբերեն: Նրա ստեղծագործություններին բնորոշ են արդիականության զգացողությունը, քնարական տրամադրությունը: Մ. հայերեն է թարգմանել Ա. Բլոկի «Տասներկուսը» (1968), Գ. Սկովորոդայի «Հատընտիրը» (1972):

*Երկ.* Ճանապարհ, բանաստեղծություններ և պոեմներ, Ե., 1975: Ծաղկաքաղ, Ե., 1981: Истоки армянской поэзии, Е., 1980.

**ՄԻՐՆԻ** Պանաս (իսկականը՝ Ռ ու դ չ ե ն կ ո Աֆանասի Յակովլևիչ) (1849, Միրգորոդ—1920, Պոլտավա), ուկրաինացի գրող: Հիմնականում ռեալիստորեն պատկերել է ուկր. գյուղը՝ իր սոցիալական հակասություններով ու դասակարգային շերտավորումով: Այս առումով բնորոշ է «Մի՞թե եզները բառաչում են, երբ մսուրը լիքն է» (հրտ. 1880, Ժնև) վեպը [գրել է եղբոր՝ Ի. Բիլիկի (Ի. Յա. Ռուդչենկո) հետ], որը գրողի հայրենիքում լույս է տեսել 1903-ին՝ «Կորած ուժը» վերնագրով: «Զարագործները» (1877, Ժնև) վիպակում ներկայացված են ուկր. մտավորականության տարբեր ուղիները: Ուկր. իրականության լայն պատկերն է տրված Մ-ի նաև այլ ստեղծագործություններում («Անառակ կինը», մաս 1—2, 1883—84, մաս 1—4, 1928, վեպ, համանուն կինոնկար, 1961: «Հին ու նոր վիշտը», 1897, «Քաղցած աղքատություն», հրտ. 1940, վիպակներ): 1880-ական թթ. Մ. ստեղծել է «Ինչպես որ կա՝ էնպես էլ ապրում ենք» պատմվածքների մեծ շարքը: 1905-ին հրատարակել է


Պ. Միրնի

«Երազ» արձակ պոեմը՝ ապագա անդասակարգ հասարակության մասին: Մ. հանդես է եկել նաև որպես դրամատուրգ:

**ՄԻՐՇԱՔԱՐ** Միրշաքարով Միրսաիդ (ծն. 1912), տաջիկ սովետական գրող, հասարակական գործիչ: Տաջ. ՍՍՀ ժող. բանաստեղծ (1962): ՍՄԿԿ անդամ 1944-ից: 1932—33-ին՝ «Սոխտմոնի Վախշ» («Վախշշին») թերթի խմբագիր: «Հաղթանակի դրոշ» (1934) պոեմը Վախշշինի աշխատանքային առօրյայի մասին է: Տաջ. սովետական պոեզիայի էպիկական ժանրերի զարգացման վրա ազդեցություն են գործել Մ-ի «Ոսկե դշլաղ» (1942, ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1950), «Անհնազանդ Փյանջ» (1949, ՍՍՀՄ պետ. մրցանակ, 1950), «Լենինը Պամիրում» (1955), «Սեր և պարտք» (1962) և այլ պոեմներ: Մ. տաջ. մանկական գրականության հիմնադիրներից է: Գրել է նաև պիեսներ: 1940—43-ին և 1946—59-ին եղել է Տաջ. ՍՍՀ գրողների միության վարչության պատասխանատու քարտուղար, 1961—75-ին Տաջ. ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության նախագահ: Պերգևատրվել է Լենինի 2 շքանշանով:

**ՄԻՐՈ** (Miró) Խոան (ծն. 20.4.1893, Մոնտրոյչ, Տառագոնայի մոտ, Կատալոնիա), իսպանացի նկարիչ, քանդակագործ: 1907—10-ին սովորել է Բարսելոնի Սան


Խ. Մ ի ր օ. «Պճնամոլների երեկույթը արքայադստեր մոտ» (1944, Լ. Ժ. Կլեյնի հավաքածու, Փարիզ)

Խորխե Գեղեցիկ արվեստների բարձրագույն դպրոցում: 1919-ից ապրում է Փարիզում: Սյուրռեալիզմի առաջին ցուցահանդեսի (1925) մասնակից: Մ-ի պարզամիտ, մանկական նկարչություն հիշեցնող նրբագեղ-դեկորատիվ աշխատանքներում միահյուսվում են առարկայազերծ անորոշ մարմինների ու կենդանակերպ ֆանտաստիկ արարածները («Կատալոնյան բնանկար», 1924, Ժամանակակից արվեստի թանգարան, Նյու Յորք): 1940—50-ական թթ. հարել է *աբստրակտ արվեստին*: Նկարազարդումներ, էսքիզներ է կատարել խեցեղենի և գորգերի համար, աշխատել մոնումենտալ-դեկորատիվ արվեստի բնագավառում (ՅՈՒՆԵՍԿՕ-ի շենքի խճապատկերները, Փարիզ, 1958):

**ՄԻՐՈԵ ԱՍԱԴ** (իսկականը՝ Մ ա ս ո յ ա ն Միրո Ասադի, ծն. 5.9.1919, գ. Ալագյազ, ՀՍՍՀ Արագածի շրջանում), քուրդ սովետական գրող: ՀՍՍՀ կուլտուրայի վաստ. գործիչ (1970): ՍՄԿԿ անդամ 1943-ից: Ավարտել է Մոսկվայի համամիութենական հեռակա իրավաբանական ինստ-ը (1947): 1955-ից *«Ռյա թազա»* քրդերեն թերթի խմբագիրն է: Մ. Ա. հրատարակել

է (քրդերեն) «Սիսե» (1961) պատմվածքների, «Հայրենիքի զավակը» (1969) և «Սրտի զգացումը» (1973) բանաստեղծությունների ժողովածուները: Քրդերեն է թարգմանել Հ. Թումանյանի, Ե. Չարենցի և այլ գրողների գործերից: Կազմել է (Ղաչաղե Մրադի հետ) դասագրքեր քրդական դպրոցների համար: 1964-ից ՀԿԿ Կենտկոմի անդամ է: ՀՍՍՀ VII—X գումարումների Գերագույն սովետի դեպուտատ է, ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահի տեղակալ (1971-ից): Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի և «Պատվո նշան» շքանշաններով:

**ՄԻՐՈՆ** (Μύρων), մ. թ. ա. V դարի հույն քանդակագործ: Ծնվել է Էլևթերում (Բեովտիայի և Ատտիկայի սահմանագլխին), աշխատել Աթենքում: Մ-ի ստեղծագործությունները (հիմնականում բրոնզյա) չեն պահպանվել և հայտնի են միայն



Մ ի ր ո ն. «Աթենասը և Մարսիասը» (մ. թ. ա. V դ. կես), բրոնզյա բնօրինակների հռոմեական մարմարյա կրկնօրինակներ («Աթենաս»-ը՝ Լիբիգհաուզում, Մայնի Ֆրանկֆուրտ, «Մարսիաս»-ը՝ Լատերանյան թանգարաններում, Հռոմ)

անտիկ հեղինակների և հռոմ. մարմարյա կրկնօրինակների շնորհիվ: Վաղ կլասիկայի խոշորագույն ներկայացուցիչ Մ. հաղթահարել է արխաիկայի արվեստի քարացած կանոնները և ձգտել է արտահայտել շարժման կուլմինացիոն պահերը, շեշտել ներդաշնակ մարդու մարմնի դինամիկ լարվածությունը («Սկավառականետորդ», մ. թ. ա. V դ. կես, հռոմ. կրկնօրինակ, Ազգային թանգարան, Հռոմ) կամ անսանձ պոռթկումը զսպող բանական կամքը («Աթենասը և Մարսիասը» խմբաքանդակը): Ըստ անտիկ էպիգրամների հանրաճանաչ է եղել Մ-ի ստեղծած կովի արձանը, որը ժամանակակիցներին զարմացրել է իր բնականությամբ: Մ. եղել է նաև դրվագող վարպետ (ստեղծել է ռելիեֆ պատկերներով սկահակներ):

*Գրկ.* (С о к о л о в Г.), Мирон. Поликлет [Альбом], М., 1961.

**ՄԻՐՈՎԻՉ** (իսկական ազգանունը՝ Դ ու ն ա և) Եվստիգնեյ Աֆինոգենովիչ (1878—1952), բելոռուս սովետական դերասան, ռեժիսոր, դրամատուրգ և մանկավարժ: ԲՍՍՀ ժող. արտիստ (1940): Ավարտել է Պետերբուրգի Ֆ. Վոլկովի անվ. թատերական դասընթացները: 1900-ից հանդես է եկել իբրև դերասան, 1906-ից՝ դրամատուրգ: 1921—31-ին, 1941—45-ին գլխավորել է Մինսկի Բելոռուս. 1-ին պետ. դրամատիկական թատրոնը (այժմ՝ Յա. Կուպալայի անվ. թատրոն): Բեմադրություններից են՝ «Խռովություն» (ըստ Ֆուրմանովի, 1927), Ռոմանովիչի «Կամուրջ» (1929), իր պիեսներից՝ «Մաշենկա», «Կաստուս Կալինովսկի» (երկուսն էլ՝ 1923-ին), «Ընկեր Բրիգզալինի կարիերան» (1925): 1935-ին Գոմելում կազմակերպել է հանրապետությունում առաջին կոլտնտեսային թատրոնը, եղել մի շարք կոլեկտիվների գեղ. ղեկավարն ու ռեժիսորը: 1945-ից Բելոռուս. թատերական ինստ-ի դերասանի վարպետության ամբիոնի վարիչն էր (նույն թվականից՝ պրոֆեսոր):

**ՄԻՑԱՐ**, ζ Մ ե ծ ա ր ջ ի, *Մեծ արջ* համաստեղության «շերեփի» կոթի վերջից երկրորդ աստղը: Կրկնակի աստղ է՝ 2,4 և 4,0 *աստղային մեծության* բաղադրիչներով, որոնք իրարից 11,8° անկյունային հեռավորության վրա են գտնվում (դրանցից յուրաքանչյուրը նույնպես կրկնակի աստղ է): Մ-ի անվանումն առաջացել է արաբ. ձի բառից, իսկ դրա արբանյակ Ալկորինը՝ հեծյալ բառից: Հնում արաբները հեծելազորում թույլատրում էին ծառայելու նրանց, ովքեր այդ աստղերը տեսնում էին անզեն աչքով:

*Բ. Թումանյան*

**ՄԻՑԵԼԻՈՒՄ** (< հուն. μύκης — սունկ), տես *Սնկամարմին*:

**ՄԻՑԵԼՆԵՐ** (նոր լատ. micella, < լատ. mica — հատիկ, փշրանք), դիսպերսված ֆազի առանձին մասնիկները *կոլերում*: Բաղկացած են բյուրեղական կամ ամորֆ միջուկից և մակերևութային շերտից, որը ներառնում է միջուկի հետ կապված հեղուկի մոլեկուլները: Լ ի ո ֆ ո բ զոլում Մ-ի մակերևութային շերտը բաղկացած է զոլը կայունացնող նյութի ադսորբված մոլեկուլներից կամ իոններից: Էլեկտրոլիտով կայունացված լիոֆոբ հիդրոզոլերում միջուկը շրջապատված է հականուն իոնների կրկնակի էլեկտրական շերտով: Մ-ի միջուկի հետ անմիջականորեն կապված իոնները (պոտենցիալը որոշող) հակաիոնների մի մասի հետ առաջացնում են ա դ ս ո ր բ վ ա ծ շ ե ր տ ը, իսկ հակաիոնների մյուս մասը կազմում է երկրորդ՝ դ ի ֆ ու զ ի ո ն շ ե ր տ ը: Այն խանգարում է Մ-ին մոտենալ և կպչել իրար (տես *Կոագուլյացիա*): Մ. ամբողջությամբ էլեկտրաչեզոք են: Լ ի ո ֆ ի լ զոլերը, ի տարբերություն լիոֆոբ զոլերի, թերմոդինամիկորեն կայուն են և առաջանում են ինքնաբերաբար նյութը լուծիչի հետ խառնելիս, եթե նրա կոնցենտրացիան մ ի ց ե լ ա գ ո յ ա ց մ ա ն կ ր ի տ ի կ ա կ ա ն կոնցենտրացիայից բարձր է: Մ. տասնյակ կամ հարյուրավոր լիոֆոբերի դեպքում՝ միլիոնավոր մոլեկուլների համախմբեր են: Ջրային միջավայրում հիդրոֆիլ Մ. առաջացնող մոլեկուլները դասավորվում են այնպես, որ նրանց հիդրոֆոբ խմբերը առաջացնում են Մ-ի միջուկը, իսկ հիդրոֆիլները՝ մակերևութային շերտը (օրգ. հեղուկներում մոլեկուլները կարող են ունենալ հակառակ դասավորություն): Մեծ կոնցենտրացիայի դեպքում Մ-ի ձևի և տարածական դիրքորոշման փոփոխությունները առաջացնում են ժելի կամ հեղուկ բյուրեղների տարածական ցանց: Մ-ի գոյությամբ են պայմանավորված կենսաբանական համակարգերում և տեխնոլոգիական պրոցեսներում տեղի ունեցող մի շարք երևույթներ: (Տես նաև *Լիոֆիլ և լիոֆոբ կոլոիդներ*, *Կոլոիդների քիմիա*):

**ՄԻՑԿԵՎԻՉ** (Mickiewicz) Ադամ [24.12. 1798, Զաոսյե ագարակ, Նովոգրուդեկի մոտ (այժմ՝ Բելոռուսական ՍՍՀ-ում)—26.11.1855, Կ. Պոլիս], լեհ բանաստեղծ, ազգային-ազատագրական շարժման գործիչ: Սովորել է Վիլնոյի (այժմ՝ Վիլնյուս) համալսարանի պատմաբանասիրական ֆակուլտետում (1815—19): Վաղ շրջանի գործերը (առաջին բանաստեղծությունը հրտ. 1818) վկայում են, որ Մ. տարվել է Լուսավորականության ազատախոհ ավանդույթներով: 1817-ից մասնակցել է «Ֆիլոմատներ» («գիտության բարեկամներ») և «Ֆիլարետներ» («բարեբարության սիրողներ») հայրենասիրական երիտասարդական գաղտնի խմբակների ստեղծմանն ու գործունեությանը, նրանց համար գրել ծրագրային բանաստեղծություններ («Ներբող երիտասարդության», 1820, հայ. հրտ. 1899, «Տաղ երիտասարդության», «Անահիտ»-ում): Մ-ի առաջին չափածո ժողովածուն («Պոեզիա», հ. 1, 1822) դարձավ լեհական գրականության մեջ ռոմանտիկական ուղղության մանիֆեստը: «Պոեզիա»-ի (1823) 2-րդ հատորում զետեղված էր «Գրաժինա» քնարա-էպիկական ռոմանտիկական պոեմը, որով սկզբնավորվեց այսպես կոչված լեհական «բանաստեղծական վիպակի» ժանրը: Պոեմը փառաբանում է հերոս անհատի սխրանքն ու անձնազոհությունը: Այդ հատորում էր նաև «Նախահայրեր» (մաս 2,4) դրամատիկական պոեմը (դժբախտ սիրուց տանջվող հերոսը մերկացնում է «սրտի իրավունքները» ոտնահարող հասարակությունը):

Ֆիլոմատ-ֆիլարետական կազմակերպությունների գործով ձերբակալված (1823) Մ. 1824-ին աքսորվում է Լիտվայից և մինչև 1829-ը մնում Ռուսաստանում (Պետերբուրգ, Օդեսա, Մոսկվա), որտեղ մտերմանում է դեկաբրիստական շարժման մասնակիցների (Կ. Ռիլեև, Ա. Բեստուժև) և ականավոր գրողների (Ա. Ս. Պուշկին և ուրիշներ) հետ: Ռուսաստանում լույս են տեսնում նրա «Սոնետներ» (1826) գիրքը և «Կոնրադ Վալենրոդ» (1828) մեծածավալ պոեմը: Վերջինս պատկերում է լիտվ. ժողովրդի պայքարը ընդդեմ գերմանական խաչակիրների: Միայնակ հերոս Վալենրոդը իր անձնական երջանկությունը զոհում է հանուն ժողովրդի փրկության: Պոեմը հեղափոխականացնող ազդեցություն է գործել ժամանակակիցների վրա: 1829-ին Մ. մեկնել է Ռուսաստանից, եղել Գերմանիայում, Շվեյցարիայում, Իտալիայում: Լեհական ապստամբությանը (1830) միանալու անհաջող փորձից հետո նա ընդմիշտ մնացել է տարագրության մեջ (ապրել է առավելապես Փարիզում)՝ շարունակելով գրական և հե-


Ա. Միցկևիչ

դափոխական գործունեությունը։ Ապստամբության անհաջողության և լեհ ժողովրդի ճակատագրի ողբը, միաժամանակ պայքարը շարունակելու կոչը դարձել են նրա այդ շրջանի ստեղծագործության («Նախահայրեր», մաս 3, «Լեհ ժողովրդի և լեհ ուխտավորի գիրքը», 1832) բովանդակությունը, թեև Մ. աստիճանաբար տեղի է տվել կրոնամիստիկական տրամադրություններին։ «Նախահայրեր»-ի 3-րդ մասի ուժը ինքնակալության և լեհ արիստոկրատիայի մերկացումն է, աստծուն (որպես աշխարհում տիրող չարիքի մեղավորի) մենամարտի կանչող Կոնրադի տիտանական կերպարի ստեղծումը։ 1834-ին Մ. հրատարակել է իր վերջին մեծածավալ պոեմը՝ «Պան Թադեուշ» ազգային հերոսապատումը, որտեղ պարզորոշ դրսևորվել են նրա ռեալիստական միտումները։ Պոեմը, որ լեհական պոեզիայի գլուխգործոցն է, պատկերում է շլյախտայի կենցաղն ու բարքերը։ 1839—1840-ին հռոմեական գրականություն է դասավանդել Լոզանում, 1840—44-ին վարել է Փարիզի Կոլեժ դը Ֆրանսի սլավոնական գրականության ամբիոնը։ 1841-ին Մ. մտել է լեհ միստիկ փիլիսոփա Ա. Տովյանսկու աղանդի մեջ, որը բացասական ազդեցություն է գործել նրա հասարակական-քաղաքական կյանքի վրա (Մ. 1847-ին հեռացել է այդ աղանդից)։ 1848-ին վերսկսել է հեղափոխական գործունեությունը. ստեղծել է Իտալիայի ազատագրության համար պայքարող լեհական լեգեոն, Փարիզում աշխատակցել է «Տրիբուն դե փյուփլը» (La Tribune des peuples», 1849) թերթին, հանդես է եկել հեղափոխական-դեմոկրատական բնույթի հոդվածներով։ Ղրիմի պատերազմի (1853—56) տարիներին Մ. քաղ. առաքելությամբ մեկնել է Կ. Պոլիս, որտեղ և մահացել է ժանտախտից (աճյունը, որ թաղվել էր Փարիզում, 1890-ին տեղափոխվել է Կրակով)։

Մ-ի պոեզիան մեծ նշանակություն է ունեցել լեհական ազգային-ազատագրական շարժման համար, դեմոկրատական մտքի զարգացման, լեհական գրականության նորացման համար, հարստացրել է գրական լեզուն, տաղաչափությունը, բանաստեղծական ժանրերը։

Մ-ի ստեղծագործությունները թարգմանվել են աշխարհի շատ լեզուներով։ Հայ իրականության մեջ նրան նվիրված առաջին հոդվածը պատկանում է Ս. Ոսկանի գրչին («Արևելք», 1856), նրա մասին գրել է Գ. Այվազովսկին («Մասյաց աղավնի», 1860)։ Մ-ի առաջին հայ թարգմանիչն է Հ. Հովհաննիսյանը (թարգմանել է 1880-ից)։ Մ-ին լայնորեն պրոպագանդել է Ա. Չոպանյանը. նրա կյանքի ու ստեղծագործության մասին գրել է հոդվածներ, թարգմանել Կոնրադի մենախոսությունը «Նախահայրեր»-ից, «Ֆարիս» պոեմը և «Սվիտեզուհի» բալլադը։ 1893-ին հրատարակվել է «Կոնրադ Վալենրոդ» պոեմը (թրգմ. Դ. Մարգարյան)։ Մ-ի սոնետները թարգմանել են Հ. Թումանյանը, Օ. Անոփյանը, Դ. Վարուժանը, բալլադները՝ Ք. Քուշներյանը, Ռ. Զարդարյանը, Ա. Չոպանյանը։ Սովետական շրջանում Մ-ին հայ ընթերցողին են ներկայացրել Վ. Նորենցը, Գ. Էմինը, Պ. Սևակը, Վ. Դավթյանը և ուրիշներ։

*Երկ.* Ընտ. երկ., Ե., 1955։

*Գրկ.* Яструн М., Мицкевич, [пер. с польского], М., 1963. *Բ. Բարսեղյան*

**ՄԻՑԿԵՎԻՉ** Սերգեյ Իվանովիչ (1869—1944), սովետական բժիշկ, կուսակցական և պետական գործիչ, սովետական առողջապահության կազմակերպիչներից։ Կոմունիստական կուսակցության անդամ 1893-ից։ Ա. Ն. Վինոկուրովի հետ 1893-ին ստեղծել է առաջին մարքսիստական խումբը Մոսկվայում, որը դարձավ «Բանվորական միության» կորիզը։ 1894-ին ձերբակալվել է, 1897-ին՝ աքսորվել Յակուտիա, ուր աշխատել է որպես օկրուգի բժիշկ։ 1903—14-ին զբաղվել է բժշկությամբ Ռուսաստանի տարբեր քաղաքներում։ Հոկտեմբերյան հեղափոխությունից (1917) հետո եղել է ներքին գործերի ժողկոմատի բժշկ. կոլեգիայի անդամ և բժշկ. կոլեգիաների խորհրդի անդամ, 1918-ին՝ ժող. կրթության Մոսկվայի բաժնի վարիչի տեղակալ, 1919-ին՝ Հարավային և Հարավ-Արևմտյան ռազմաճակատների սանմասի պետի օգնական։ Մ. եղել է Հեղափոխության թանգարանի հիմնադիրներից (1922) և նրա դիրեկտորը (1924—34), ՌԿ(բ)Կ IX համագումարի պատվիրակ։ Կյանքի վերջին տարիներին զբաղվել է գրական գործունեությամբ։

**ՄԻՑԿՅԱՎԻՉՅՈՒՍ-ԿԱՊՍՈՒԿԱՍ** Վինցաս Սիմանովիչ (Միցկևիչ-Կապսուկաս Վիկենտի Սեմյոնովիչ) (1880—1935), Լիտվայի կոմկուսի կազմակերպիչներից և ղեկավարներից, միջազգային կոմունիստական շարժման գործիչ, լիտվացի առաջին մարքսիստ գրաքննադատը։ Սովորել է Բեռլինի համալսարանում (1902—04)։ 1903-ից լիտվ. ս-դ-ի անդամ։ Մասնակցել է 1905—07-ի հեղափոխությանը Լիտվայում, 1907-ից եղել է բանտում և աքսորում։ 1914-ին Կրակովում կապ է հաստատել Վ. Ի. Լենինի հետ, ապա վտարանդվել է Մեծ Բրիտանիա, ԱՄՆ, խմբագրել է լիտվ. ս-դ. թերթեր։ 1917-ի հունիսին Պետրոգրադում մտել է ՌՍԴԲ(բ)Կ շարքերը։ Խմբագրել է լիտվ. առաջին բոլշևիկյան «Տիեսա» («Ճշմարտություն») թերթը։ ՌՍԴԲ(բ)Կ VI համագումարի և Սովետների համառուսաստանյան II համագումարի պատգամավոր։ 1917-ի Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո՝ սովետական կառավարության կոմիսար լիտվ. գործերի գծով, ՌՍԴԲ(բ)Կ, ապա ՌԿ(բ)Կ Կենտկոմին կից լիտվ. սեկցիայի Կենտրոնական բյուրոյի անդամ, 1918—19-ին՝ Լիտվայի առաջին սովետական կառավարության, ապա Լիտվա—Բելոռուսական ՍՍՀ-ի Ժողկոմխորհի նախագահ։ 1921-ից աշխատել է Մոսկվայում, 1923—35-ին՝ Կոմինտերնի Գործադիր կոմիտեում։ Կուսակցության XI, XII, XIV—XVII համագումարների պատգամավոր, VIII համագումարում (1919) ընտրվել է ՌԿ(բ)Կ Կենտկոմի անդամության թեկնածու։ Եղել է Կոմինտերնի II—VI կոնգրեսների պատգամավոր։

Գրել է պատմության, փիլ-յան, գրականության հարցերին նվիրված աշխատություններ, ուսումնասիրել է 1920—30-ական թթ. լիտվ. գրականությունը, լուսաբանել կուսակցականության և ժողովրդայնության տեսական խնդիրները, գրականության գաղափարական և գեղագիտական կողմը։

**ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ**, միութենական սովետական սոցիալիստական հանրապետություն, սովետական սուվերեն սոցիալիստական պետություն ՍՍՀՄ-ում։ Մ. հ-ները կամավորության սկզբունքով միավորվել են մեկ միասնական պետության՝ *Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության* մեջ՝ քաղ. փոխօգնությունը, պաշտպանությունը ապահովելու նպատակով։ ՍՍՀ Միության կազմում կան 15 Մ. հ-ներ՝ ՌՍՖՍՀ, Ուկրաինական, Բելոռուսական, Ուզբեկական, Ղազախական, Վրացական, Ադրբեջանական, Լիտվական, Մոլդավական, Լատվիական, Կիրգիզական, Տաջիկական, Հայկական, Թուրքմենական, Էստոնական։ ՍՍՀ Միության և Մ. հ-ների փոխհարաբերությունները կառուցված են դեմոկրատական ցենտրալիզմի, սոցիալիստական ֆեդերալիզմի, սովետական սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքներով։ Յուրաքանչյուր միութենական հանրապետություն ունի սեփական տերիտորիա, սահմանադրություն, պետ. իշխանության և կառավարման բարձրագույն մարմիններ (*Գերագույն սովետ*, *Մինիստրների խորհուրդ*), օրենսդրություն, հանրապետական (միաժամանակ միութենական) քաղաքացիություն, պետ. խորհրդանիշ (գերբ, դրոշ, հիմն) և մայրաքաղաք։ Մ. հ-ները ֆեդերացիայի իրավահավասար անդամներ են, ՍՍՀՄ-ի հանդեպ կրում են միատեսակ իրավունքներ ու պարտականություններ։ Մ. հ-ները իրենց տերիտորիայում պետ. իշխանությունն իրականացնում են ինքնուրույն (ՍՍՀՄ սահմանադրություն, հոդված 76), իրավունք ունեն ազատորեն դուրս գալ ՍՍՀՄ-ից (ՍՍՀՄ սահմանադրություն, հոդված 72)։ Նրանք ՍՍՀՄ Գերագույն սովետի, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության, ՍՍՀՄ կառավարության և ՍՍՀ Միության մյուս մարմինների կազմում մասնակցում են ՍՍՀՄ տնօրինությանը վերապահված հարցերի լուծմանը։ Յուրաքանչյուր հանրապետությունից ՍՍՀՄ Գերագույն սովետի Ազգությունների սովետում ընտրվում է 32 դեպուտատ։ Նրանք ընդհանուր հիմունքներով ներգրավված են ՍՍՀՄ Գերագույն սովետի Միության սովետում։ ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության նախագահի 15 տեղակալները միութենական հանրապետությունների Գերագույն սովետի Նախագահությունների նախագահներն են։ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի կազմի մեջ մըտ-

նում են Մ. հ-ների Մինիստրների խորհուրդների նախագահները (ՍՍՀՄ սահմանադրություն, հոդված 129), ՍՍՀՄ գերագույն դատարանի կազմի մեջ՝ Մ. հ-ների գերագույն դատարանի նախագահները (ՍՍՀՄ սահմանադրություն, հոդված 153): Մ. հ-ների դատախազներին, որքանով ՍՍՀՄ-ում դատախազությունը միութենական միասնական համակարգ է, նշանակում է ՍՍՀՄ գլխավոր դատախազը: Մ. հ-ների առաջարկով կարող է գումարվել ՍՍՀՄ Գերագույն սովետի արտակարգ նստաշրջան: Մ. հ-յան տերիտորիան, առանց նրա համաձայնության, չի կարող փոխվել: Մ. հ. սահմանում է իր երկրամասային, մարզային, օկրուգային ու շրջանային բաժանումը, լուծում է վարչատերիտորիալ կառուցվածքի այլ հարցեր (ՍՍՀՄ սահմանադրություն, հոդված 79): Մ. հ. իրավունք ունի հարաբերություններ հաստատել օտարերկրյա պետությունների հետ, կնքել պայմանագիր, փոխանակել դիվանագիտական և հյուպատոսական ներկայացուցիչներ, մասնակցել միջազգային կազմակերպությունների գործունեությանը (ՍՍՀՄ սահմանադրություն, հոդված 80): Մ. հ. ապահովում է տնտ. և սոցիալական կոմպլեքսային զարգացումն իր տերիտորիայում, նպաստում է այդ տերիտորիայում ՍՍՀ Միության լիազորությունների իրականացմանը, կենսագործում է ՍՍՀՄ պետ. իշխանության և կառավարման բարձրագույն մարմինների որոշումները: Մ. հ. իր տնօրինությանը վերապահված հարցերում կոորդինացնում և վերահսկում է միութենական ենթակայության ձեռնարկությունների, հիմնարկների և կազմակերպությունների գործունեությունը:

*Գրկ.* Բ ր ե ժ ն և Լ. Ի., Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիսնամյակի մասին, Ե., 1973: ՍՍՀՄ սահմանադրություն: ՀՍՍՀ սահմանադրություն:

*Հ. Խաչատրյան*

**ՄԻՈՒԹՅԱՆ ՍՈՎԵՏ**, ՍՍՀՄ *Գերագույն սովետի* երկու պալատներից մեկը, որն ի տարբերություն *Ազգությունների սովետի*, արտահայտում է ՍՍՀ Միության ողջ աշխատավորության ընդհանուր շահերը՝ անկախ ազգությունից: Ընտրվում է 5 տարի ժամկետով, ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրություններով՝ փակ գաղտնի քվեարկությամբ՝ ըստ հավասար թվով բնակչություն ունեցող ընտրական օկրուգների (ընդամենը՝ 750 օկրուգ): Մ. ս. ունի նույն իրավունքները, ինչ Ազգությունների սովետը և նույնքան դեպուտատներ: Ընտրում է նախագահ, նախագահի 4 տեղակալներ, մշտական հանձնաժողովներ:

**«ՄԻՈՒԹՅՈՒՆ»**, հասարակական, քաղաքական և ուսումնական կիսամսյա հանդես: Զմյուռնիայի Հաշտենից ընկերության հրատարակություն: Լույս է տեսել 1860-ին, Զմյուռնիայում: Խմբագիր՝ Ս. Վանանդեցի: Պաշտպանել է Ազգային սահմանադրությունը, ձգտել գաղթավայրի միաբանության: Նպաստել է ազգային լուսավորությանն ու առաջադիմությանը, դրականորեն վերաբերվել Ս. Ոսկանյանի «*Արևմուտք*»-ի դիրքորոշմանը: Լուսաբանել է Զմյուռնիայի վարժարանների, «*Վասպուրական թատրոնի*» գործունեությունը, ներկայացրել եվրոպական գրականությունը: Աշխատակցել են Տ. Սավանալյանը, Գ. Կոստանդյանը, Հ. Տետեյանը, Մ. Մամուրյանը, Ա. Պալապանյանը, Ղ. Մամուրյանը, Ս. Չելեքյանը, Ա. Ղոնձայանը, Ս. Փափազյանը և ուրիշներ: 1861—62-ին հրատարակվել է «Միություն սահմանադրական» անունով:

*Մ. Հակոբյան*

**«ՄԻՈՒԹՅՈՒՆ»**, Հայկական բարեգործական ընդհանուր միության (ՀԲԸՄ) պաշտոնաթերթ: Լույս է տեսել 1912—61-ին (1912—27-ին՝ Կահիրեում, 1928—40-ին՝ Փարիզում, 1947—61-ին՝ Նյու Յորքում): 1961-ին «Մ.»-ի և «Հուշարար»-ի միավորումով ստեղծվել է «*Հուշարար-Միություն*»-ը, որը պահպանել է «Մ.»-ի համարակալությունը:

**«ՄԻՈՒԹՅՈՒՆ»**, գրական-գեղարվեստական, հասարակական շաբաթաթերթ: Ընդհանուր հայ աշակերտական միության օրգան: Լույս է տեսել 1917—19-ին, Թիֆլիսում: Խմբագիրներ՝ Գ. *Աբովյան*, Ս. Էլբակյան: Լուսաբանել է դպրոցական կյանքը Անդրկովկասում, արծարծել կրթության և դաստիարակության հարցեր: Մեծ ուշադրություն է նվիրել մայրենի լեզվով ծրագրերի ստեղծմանն ու կատարելագործմանը, պարբերաբար անդրադարձել հայոց լեզվի ու գրականության, պատմության, աշխարհագրության և այլ առարկաների ուսուցման խնդիրներին՝ այդ նպատակով մեթոդական օգնություն ցույց տվել ուսուցիչներին: «Մ.» տպագրել է լուրեր Անդրկովկասի մշակութային, գրական, հասարակական կյանքից, գեղարվեստական ստեղծագործություններ, բանավիճային հոդվածներ: Աշխատակցել են Գ. Քաջաղյանը, Ա. Քանանյանը, Ս. Ամիրխանյանը, Հ. Շեկոյանը և ուրիշներ:

*Վ. Մաղալյան*

**«ՄԻՈՒԹՅՈՒՆ»**, հասարակական, քաղաքական և գրական շաբաթաթերթ: Պաղեստինահայ առաջադիմական ընկերակցության հրատարակություն: Լույս է տեսել 1945—47-ին, Հայֆայում (Պաղեստին): Խմբագիր՝ Հ. Մարտիրոսյան (1947-ին՝ խմբագրական կոլեգիա): Լուսաբանել է Մերձավոր Արևելքի (հատկապես Պաղեստինի) հայ գաղթավայրերի կյանքը: Ներկայացրել է ՀՍՍՀ տնտեսության, գիտության ու մշակույթի նվաճումները, ծանոթացրել սովետական մյուս հանրապետությունների կյանքին: Մեծ տեղ է հատկացրել ներգաղթին: Հանդես է եկել դաշնակցության դեմ, անդրադարձել միջազգային դրությանը, Պաղեստինի քաղ. կացությանը: Տպագրել է նաև առողջապահական հոդվածներ, մարզական լուրեր:

*Տ. Վարդանյան*

**«ՄԻՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅՈՒՆ»**, բուրժուա-կալվածատիրական նացիոնալիստական կուսակցություն Թուրքիայում: Տես *Երիտթուրքեր*:

**«ՄԻՈՒԹՅՈՒՆ Ի ՓՐԿՈՒԹՅՈՒՆ»**, հայ ազգային-ազատագրական խմբակ: Հիմնադրվել է 1872-ի մարտին, Վանում, *Մկրտիչ Ա Վանեցու* և Գ. *Սրվանձտյանի* ազատագրական գաղափարախոսության ազդեցությամբ՝ թուրք և քուրդ հարստահարիչների դեմ պայքարի նպատակով: Խմբակի ղեկավարներ Հ. Կալոյանը և Ն. Շիրվանյանը 1872-ի մայիսին այցելել են Երևան ու Թիֆլիս, Կովկասի փոխարքային հայտնել ռուսահպատակություն ընդունելու իրենց ցանկությունը, խնդրել օգնություն: Օսմանյան բռնակալության դաժան պայմաններում, գոյատևելով մոտ 2 տարի, խմբակը զգալի աշխատանք է կատարել Վանի և շրջակա գյուղերի բնակիչների մեջ ազատագրական գաղափարների տարածման գործում:

*Ե. Սահակյան*

**ՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՏՈՒՆ** Մոսկվայում, հասարակական շենք, ռուսական կլասիցիզմի ճարտարապետական հուշարձան: Կառուցել է ճարտ. Մ. *Կազակովը* (մինչև 1775-ը) իշխան Վ. Մ. Դոլգորուկի-Կրիմսկու համար: 1784-ին, երբ շենքը դարձել է «Ազնվական հավաքի» ժողովատեղի, Կազակովը այն ընդլայնել է, փոխել հատակագիծը, ներքին բակի փոխարեն կառուցել նշանավոր Սյունազարդ դահլիճը (24,8×39,5 *մ*, բարձրությունը՝ 14,5 *մ*): 1812-ի հրդեհից հետո շենքը վերականգնել է ճարտ. Ա. Բակարյովը, 1903—08-ին այն վերակառուցել է ճարտ. Ա. Մեյսները: 1917-ին, Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո, շենքը տրվել է արհմիութենական կազմակերպություններին: Այն դարձել է սովետական գրականության և արվեստի պրոպագանդայի կենտրոն, որտեղ անց են կացվում հանդիսավոր երեկոներ, դասախոսություններ, արտադրության առաջավորների և նորարարների երեկոներ, երիտասարդության և պիոներների համար միջոցառումներ: 1917-ին առաջին անգամ այստեղ անց է կացվել Նոր տարվա տոնածառի հանդես, որը 1935-ից դարձել է ավանդական:

Սյունազարդ դահլիճում են գումարվում Սովետների, արհմիությունների, գրողների և կոմպոզիտորների համագումարները: Այստեղ են կայացել Կոմինտերնի, ԿԻՄ-ի կոնգրեսները, միութենական խորհրդակցություններ: 1918—22-ին ավելի քան 40 անգամ ելույթ է ունեցել Վ. Ի. Լենինը: 1924-ի հունվարի 23—27-ը Մ. տ-ան Սյունազարդ դահլիճում է դրվել Վ. Ի. Լենինի աճյունը:

**ՄԻՔԱՅԵԼ**, *Բյուզանդիայի* կայսրեր: Հիշատակության արժանի են.

**Մ. I** Ռանգաբե, կայսր 811—813-ին: Հաջորդել է *Նիկեֆորոս I*-ին: Սիրաշահել է իր նախորդից հալածված կղերին և ավագանուն, հալածել պավլիկյաններին: Չկարողանալով լուծել ներքին ու արտաքին քաղաքականության շատ հարցեր՝ հրաժարվել է գահից:

**Մ. II** Թլվատ Ամորիացի, կայսր 820—829-ին: Ամորիական դինաստիայի հիմնադիրը: Թեև օժանդակել էր Լևոն V Հայկազնին գահ բարձրանալու, 820-ին դավադրաբար սպանել է նրան և տիրել գահին: Ձգտել է մեղմել պատկերամարտների և պատկերապաշտների հակամարտությունը, ճնշել է Թովմա Գազիրացու (*Թովմա Սլավոն*) ապստամբությունը: Պարտություն է կրել բուլղարների դեմ պատերազմում:

**Մ. III**, կայսր 842-ից: Ամորիական դինաստիայից: Բյուզ. կայսր Թեոփիլոսի և հայազգի Թեոդորայի որդին: Սկզբնապես թագավորել է մոր և մոր ազգականների խնամակալությամբ: Սպանվել է

հայազգի Վասիլի դավադրությամբ, որը գահ է բարձրացել Վասիլ I անունով: Մ. III-ի կերպարը, հիմնականում Վասիլ I-ի ժամանակագիրների ջանքերով, սկզբնաղբյուրներում աղավաղված է:

**Մ. VI Ստրատիոտիկոս**, կայսր 1056—57-ին: Ծերակույտին և դեմոսին սիրաշահելու նրա քաղաքականությունը առաջ է բերել բարձրաստիճան զինվորականության ապստամբություն, որի հետևանքով կայսր է հռչակվել Իսահակ Կոմնենոսը: Մ. VI-ի օրոք հաճախակի են դարձել սելջուկների արշավանքները կայսրության, հատկապես՝ նրա կազմի մեջ մտնող հայկ. նահանգների տարածքը:

**Մ. VIII Պալեոլոգոս** (1224—1282), կայսր 1261-ից: *Պալեոլոգոսների* դինաստիայի հիմնադիրը: Նիկիայի Լասկարիդների կայսրության զորավարներից էր: 1258-ին ընտրվել է Նիկիայի անչափահաս կայսր Հովհաննես IV Լասկարիսի (1258—1261) կայսերակից, իսկ 1259-ի սկզբին՝ կայսր: 1261-ին Մ. VIII-ի զորքերը գրավել են Կ. Պոլիսը, վերացրել խաչակիրների հիմնած *Լատինական կայսրությունը*: Մ. VIII հռչակվել է Բյուզանդիայի կայսր՝ վերականգնելով 1204-ից ընդհատված Բյուզանդական կայսրությունը: Երկրի ներքին և արտաքին ծանր վիճակից դուրս գալու ելքը համարել է դաշինքը Արևմուտքի հետ՝ դրա անհրաժեշտ պայման դիտելով եկեղեցիների միությունը, որն իրագործվել է 1274-ին (պապի գերիշխանությամբ): Սակայն միությունը ձևական բնույթ էր կրում. պապը չէր իրագործում իր պարտավորությունները Բյուզանդիայի հանդեպ, իսկ կայսրության տարբեր խավերի ներկայացուցիչները չէին ընդունում միությունը:

*Հ. Բարթիկյան*

**ՄԻՔԱՅԵԼ Ա ԱՋԱՊԱՀՅԱՆ** (ծն. թ. անհտ.—1758), Կիլիկիայի հայոց կաթողիկոս՝ 1737-ից: Եղբայրը և հաջորդը Ղուկաս կաթողիկոսի, որի աթոռակիցն էր 1737-ից: Նույն թվին վերադարձրել է Հալեպի Ս. Աստվածածին եկեղեցին, որը 1733-ին կաթոլիկները տեղի փաշային կաշառելով, խլել էին հայերից: Երկու անգամ (1749 և 1751) փորձել է դառնալ ամբողջ թուրքահայության կաթողիկոս, բայց ապարդյուն:

**ՄԻՔԱՅԵԼ Ա ՍԵԲԱՍՏԱՑԻ** (ծն. թ. անհտ.—1576), Հայոց կաթողիկոս 1567-ից: 1545-ից եղել է *Ստեփանոս Ե Սալմաստեցի* կաթողիկոսի աթոռակիցը, ապա հաջորդել նրան: 1562-ին Սեբաստիայում գումարել է ժողով, որի անունից պատվիրակություն է ուղարկել Վենետիկ՝ Աբգար դպիր Թոխաթեցու գլխավորությամբ: Պատվիրակությունը Հռոմի պապից օգնություն էր խնդրելու՝ պարսկ. և թուրք. լծից հայերին ազատագրելու համար, ինչպես նաև Եվրոպայում ծանոթանալու էր տպագրության գործին: 1563-ին Մ. Ա Ս. կրկին դիմեց Հռոմի պապի օգնությանը, սակայն որևէ արդյունքի չհասավ:

**ՄԻՔԱՅԵԼ ԱՍՈՐԻ** (1126, Մելիտենե — 1199), ասորի պատմիչ, եկեղեցական գործիչ: 1166-ից՝ *Հակոբիկյան եկեղեցու* պատրիարք:

Գրել է մի շարք երկեր: Հայերեն թարգմանվածներից հայտնի են՝ «Ժամանակագրութիւն», «Ճառն քահանայութեան նորին տեառն Միխայելի ասացեալ», «Զիօստովանութիւնն հաւատոյ», «Վասն աստիճանաց եկեղեցւոյ», «Գաւազանագիրք» ևն: Ամենակարևորը «Ժամանակագրութիւնն» է, ուր պատմությունը շարադրում է սկզբից մինչև իր օրերը: Այն թարգմանել են 1248-ին Իսահակ քահանան ու նրա աշակերտ Վարդան Վանականը: Հայերեն թարգմանությունը ասորերենի համառոտ տարբերակն է և մեզ է հասել երկու տարբեր օրինակներով: Դրանք հրատարակվել են Երուսաղեմում, 1870—71-ին: Մինչև XIX դ. վերջը բնագիրը անհայտ էր. պրպտումներն ի հայտ բերեցին թե՛ բնագիրը, թե՛ արաբ. (քարշունի) թարգմանությունը: Բնագիրը հրատարակվել է ֆրանս. թարգմանությամբ (հ. 1—3, 1899, 1901, 1905):

*Երկ.* Chronique de Michel le Syrien trad. J. B. Chabot, I, II, III, P., 1900—1910.

*Գրկ.* Չամչյան Մ., Պատմութիւն Հայոց, հ. 3, Վնտ., 1786: Օրմանյան Մ., Ազգապատում, մաս 1, ԿՊ, 1912: Райт В., Краткий очерк истории сирийской литературы, СПБ, 1902; Duval R., La littérature syriaque, Amsterdam, 1970. *Հ. Մելքոնյան*

**ՄԻՔԱՅԵԼ ՄԱՂԼԱԿԵԼԻ**, XII դարի վրացի նկարիչ: Ստեղծել է Մացխվարիշի եկեղեցու (Վերին Սվանեթիա) որմնանկարները (1140):

**ՄԻՔԱՅԵԼ ՊԱՆԱՐԵՏՈՍ** (Μιχαήλ Πανάρετος) (ծն. և մահ. թթ. անհտ.), XIV դարի 2-րդ կեսի և XV դարի 1-ին կեսի բյուզանդական ժամանակագիր և քաղաքական գործիչ: Ծառայել է Ալեքսիոս III Մեծի (1349—90) արքունիքում: Գրել է «Տրապիզոնի կայսրերի՝ Մեծ Կոմնենոսների մասին...» ժամանակագրությունը: Տրապիզոնի կայսրության պատմության հիմնական սկզբնաղբյուրն է, ընդգրկում է 1204—1426-ի ժամանակաշրջանը: Կարևոր տեղեկություններ է հաղորդում բյուզանդա-վրացական հարաբերությունների, բյուզանդա-թուրքական պատերազմների, ակկոյունլուների, Հայաստանի (մասնավորապես՝ Երզնկայի, Պարխարի լեռների ևն) վերաբերյալ:

*Երկ.* Трапезундская хроника, изд. А. Хаханова, М., 1905. *Հ. Բարթիկյան*

**ՄԻՔԱՅԵԼՅԱՆ** Ալեքսանդր Լևոնի (ծն. 29.8.1928, Թիֆլիս), հայ սովետական սրտաբան-վիրաբույժ: Բժշկ. գիտ. դ-ր (1962), պրոֆեսոր (1965): ՍՄԿԿ անդամ 1962-ից: 1953-ին ավարտել է Մոսկվայի 2-րդ բժշկ. ինստ-ը, աշխատել Մոսկվայի 1-ին քաղաքային կլինիկական հիվանդանոցում, ՍՍՀՄ ԲԳԱ կրծքային վիրաբուժության ինստ-ում, բժիշկների կատարելագործման կենտրոնական ինստ-ում, ՍՍՀՄ ԳԱ փորձառական կենսաբանության և բժշկության ինստ-ի Սիբիրյան բաժանմունքի վիրաբուժական բաժնում, ապա արյան արհեստական շրջանառության լաբորատորիայում: 1961—74-ին աշխատել է Երևանի սրտաբանության և սրտային վիրաբուժության ինստ-ում, 1974-ից՝ կլինիկական և փորձառական վիրաբուժության համամիութենական ԳՀԻ-ի մասնաճյուղի դիրեկտոր: Մ-ի գիտական աշխատանքները վերաբերում են սրտի և խոշոր անոթների վերականգնման վիրահատությունների ժամանակ սրտամկանի ախտաբանաֆիզիոլոգիական, կենսաքիմիական և ձևաբանա-կառուցվածքային փոփոխությունների ուսումնասիրություններին, սրտի աորտային արատների դասակարգմանը, կլինիկային, ախտորոշմանը և վիրահատական բուժման տեխնիկային ու ետվիրահատական շրջանի հարցերին:

Մ. սրտաբանների և վիրաբույժների համամիութենական և ՀՍՍՀ գիտական ընկերությունների վարչությունների, ՍՍՀՄ ԲԳԱ սիրտ-անոթային վիրաբուժության պրոբլեմային հանձնաժողովի, ՍՍՀՄ ԲԳԱ վիրաբուժության, օրգանների և հյուսվածքների պատվաստման ու արհեստական օրգանների պրոթեզների պատրաստման գիտական խորհուրդների անդամ է:

*Երկ.* Хирургическое лечение аортальных пороков сердца, Е., 1963; Клинико-патофизиологические изменения при сужении левого атриовентрикулярного отверстия сердца и хирургическая коррекция его, Е., 1964.

**ՄԻՔԱՅԵԼՅԱՆ** Գաբրիել Գաբրիելի (1885, Այնթապ —26.5.1935, Հալեպ), հայ արևելագետ, բանասեր, պատմաբան: Պրոֆեսոր: Սովորել է Այնթապի Թերա Սանտա, Ջենովայի աստվածաբանական կոլեջներում, ձեռնադրվել կաթոլիկ քահանա: Տիրապետել է թուրքերենին, արաբերենին, իտալերենին, ֆրանսերենին: Մինչև 1914-ը սեմական լեզուներ է դասավանդել Ֆրիբուրգի (Գերմանիա) Ազատ կաթոլիկական համալսարանում: 1914-ին, հակառակ Հռոմի պապի կարգադրության, թողել է մանկավարժական գործունեությունը, հրաժարվել կաթոլիկությունից և ձեռնամուխ եղել Մեծ եղեռնից փրկված հայերի համար օգնություն կազմակերպելու գործին: Եվրոպական մայրաքաղաքներում հիմնել է օգնության կոմիտեներ, աջակցել Պողոս Նուպարի դիվանագիտական գործունեությանը: 1929-ից պատմություն է դասավանդել Հալեպի ամերիկյան կոլեջում, միաժամանակ զբաղվել հիերոգլիֆային (նախախեթական, խեթական) արձանագրությունների վերծանումով, որը լայն ճանաչում է գտել գիտական աշխարհում: Գրել է արաբերենի պատմության շրջանաբաժանմանը նվիրված աշխատություն, սահմանել չերքեզերենի քերականական և ուղղագրական կանոններ, զբաղվել հայոց պատմության հարցերով: Եղել է ՀՕԿ-ի Հալեպի բաժանմունքի նախագահը:

*Երկ.* Les langues des Hattis, «Revue Archéologique Syrienne», 1931; Deux cachets Hittits, «Revue Archéologique Syrienne», t. 2, Fas. 36, Mars, 1932. *Խ. Կարապետյան*

**ՄԻՔԱՅԵԼՅԱՆ** Գեդեոն Հայրապետի [ծն. 1.8.1907, Նոր Բայազետ (այժմ՝ Կամո)], Սովետական Միության հերոս, գնդապետ, հնագետ: ՍՄԿԿ անդամ 1928-ից: 1928-ին ավարտել է Ա. Մյասնիկյանի անվ. հայկ. միացյալ ռազմ. դպրոցը: 1939—41-ին՝ «Երևան» Պաշըավիաքիմի Հայաստանի Կենտխորհրդի նախագահ: 1941-ի հուլիսին, որպես գնդի հրամանատար, մասնակցել է Տուլայի համար մղված մարտերին: 1943-ին ավարտել է Մ. Ֆրունզեի անվ. ռազմ. ակադեմիան և նշանակվել գնդի հրամանատար 2-րդ Ուկրաինական ռազմաճակատում: 1943-ի հոկտ. 26-ին, Դնեպրը գետանցելու և դիրքեր գրավելու


Գ. Հ. Միքայելյան

համար, նրան շնորհվել է Սովետական Միության հերոսի կոչում: Հայրենական մեծ պատերազմից հետո եղել է Երևանի համալսարանի ռազմ. ամբիոնի պետ, զուգընթաց ավարտել է համալսարանի պատմության ֆակուլտետը (1950): ՀՍՍՀ II գումարման Գերագույն սովետի դեպուտատ, Գերագույն սովետի Նախագահության նախագահի տեղակալ (1947—1951): Պարգևատրվել է Լենինի 2, Կարմիր դրոշի շքանշաններով: 1959-ից աշխատում է ՀՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստ-ում:

*Երկ.* Սևանի ավազանի կիկլոպյան ամրոցները, Ե., 1968: Նոր Բայազետ, Ե., 1980 («Հայ ազգագրություն և բանահյուսություն», հ. 11):

**ՄԻՔԱՅԵԼՅԱՆ** Գրիգոր Գաբրիելի (1893, Դոնի Ռոստով —28.10.1953, Երևան), հայ սովետական պատմաբան, մանկավարժ: Պատմական գիտ. դ-ր (1948), պրոֆեսոր (1949): ՍՄԿԿ անդամ 1947-ից: Սովորել է Դոնի Ռոստովի համալսարանի պատմաբանասիրական ֆակուլտետում (1920—1922), ավարտել է Երևանի համալսարանի մանկավարժական (հասարակագիտական) ֆակուլտետի պատմագրական բաժինը (1926): Ընդհանուր և միջին դարերի պատմության դասընթացներ է կարդացել Երևանի բուհերում: Եղել է ՀՍՍՀ արխիվային վարչության ավագ գիտաշխատող (1933—38), Հայկական մանկավարժական ինստ-ի պատմության ֆակուլտետի դեկան (1938), նույն ինստ-ի ընդհանուր պատմության ամբիոնի վարիչ (1938—44), ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստ-ի ավագ գիտաշխատող (1944—53): Արժեքավոր է Մ-ի «Կիլիկյան հայկական պետության պատմությունը» (1952, ռուս.) մենագրությունը, որտեղ նա հանգամանորեն վերլուծել է Կիլիկյան Հայաստանի առաջացման ու անկման սոցիալ-քաղ. պատճառները, բացահայտել նրա դերը Արևելքի և Արևմուտքի երկրների քաղ., տնտ. և մշակութային փոխհարաբերություններում: *Պ. Հովհաննիսյան*

**ՄԻՔԱՅԵԼՅԱՆ** Լյուդվիգ Արսենի [ծն. 17.9.1905, գ. Բայրաղտար (Կարսի մարզում)], հայ սովետական գրող: 1929-ին ավարտել է Լենինականի մանկավարժական ուսումնարանը, 1933-ին՝ Երևանի մանկավարժական ինստ-ի լեզվագրական ֆակուլտետը: Եղել է ուսուցիչ: Առաջին պիեսը («Օսաննա») բեմադրվել է 1924-ին, Ստեփանավանում: Լենինականում են բեմադրվել «Գոշ», «Վարազդատ», «Արտավազդ Երկրորդ» պիեսները: 1963-ին լույս է տեսել Մ-ի «Պատմական ողբերգություններ» ժողովածուն: Հրատարակել է նաև «Զարինե» (1958), «Վարդենիք» (1974) վեպերը և «Միրո ճանապարհ» (1968) պատմվածքների ժողովածուն:

**ՄԻՔԱՅԵԼՅԱՆ** Կարեն (Գ ե ր ա ս ի մ) Սարգսի [1883, Վերին Ագուլիս (այժմ՝ Նախիջևանի ԻՍՍՀ Օրդուբադի շրջանում)—1942], հայ սովետական գրող: Սովորել է Թիֆլիսի Ներսիսյան դպրոցում, 1905-ից՝ Մոսկվայի համալսարանում (ազատ ունկնդիր), այնուհետև՝ Ենայի (Գերմանիա) համալսարանի փիլ. ֆակուլտետում: 1903-ից հարել է հեղափոխականորեն տրամադրված խմբակներին: Թղթակցել է «Շավիղ» թերթին՝ Կ. Հզորյան ստորագրությամբ: 1910—12-ին եղել է «*Գարուն*» (Մոսկվա) գրական-գեղարվեստական ալմանախի խմբագիրներից: Մասնակցել է Վ. Բրյուսովի խմբագրությամբ լույս տեսած հայ պոեզիայի անթոլոգիայի թարգմանության աշխատանքներին: Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո աշխատել է Ազգությունների գործերի ժող. կոմիսարիատի հայկ. գործերի կոմիսարիատում: 1925—27-ին որպես Հայաստանի Կարմիր խաչի ընկերության և ՀՕԿ-ի պատվիրակության անդամ մեկնել է Եվրոպա և ԱՄՆ: 1907-ին հրատարակել է«Զըրկանքի հույզեր», ապա՝ «Ձմռան երեկո» (1912), «Majestic: Ամերիկյան կարճ պատմվածքներ» (1928), «Գույների կռիվը» (1929) պատմվածքների և այլ արձակ գործերի ժողովածուներ: Մ. պատկերել է նախահեղափոխական շրջանի հայ աշխատավորության ծանր վիճակը, սփյուռքահայության օտարացող բարքերը, հայրենադարձության բաղձանքը: Կատարել է թարգմանություններ Օսկար Ուայլդից («Անձնվեր բարեկամ», 1920, «Հեքիաթներ», 1920 ևն), Ջոնաթան Սվիֆթից («...Գուլիվերի ճանապարհորդությունը...», 1958):

*Երկ.* Կեցցեն հաղթվածները, Ե., 1961:
*Ա. Տեր-Ստեփանյան*

**ՄԻՔԱՅԵԼՅԱՆ** Մարտին Գրիգորի (ծն. 22.3.1926, Երևան), հայ սովետական ճարտարապետ: ՀՍՍՀ վաստ. ճարտ. (1968): ՍՄԿԿ անդամ 1952-ից: Ավարտել է Երևանի Կ. Մարքսի անվ. պոլիտեխնիկական ինստ-ի ճարտ. բաժինը (1949), ուր և դասավանդում է 1955-ից: Աշխատում է «Հայպետնախագիծ» ինստ-ում, 1963-ից՝ ճարտ. արվեստանոցի ղեկավար: Մ-ի նախագծերով կառուցվել են բազմաթիվ բնակելի շենքեր (Երևան, Էջմիածին, Հրազդան), «Հայճարտշին» ԳՀԻ-ի համալիրը (1957—1964) Երևանում, առողջարաններ Արզնիում (1968), Ջերմուկում (1970, Ֆ. Վաղարշյանի հետ), Հանքավանում (1972), մշակույթի տներ Սևանում (1970), Եղեգնաձորում (1972, Զ. Սիմոնյանի հետ), Եղեռնի զոհերի հուշարձանը Նոր Խարբերդում (1965, Հ. Խաչատրյանի հետ), վարչական շենք Էջմիածնում (1974, Ֆ. Վաղարշյանի հետ), մշակութային-հասարակական կենտրոն Ջերմուկում (1972, Զ. Սիմոնյանի հետ), Մեծամոր ավանի համալիրը (1969—80), Հրազդանի կենտրոնի համալիրը (1979, Գ. Գրիգորյանի հետ) ևն: Մ. մշակել է Հայաստանի շոգ ցամաքային կլիմայի համար բնակարանների «պատշգամբ-մուտք» կոչված տիպը: Զբաղվում է Հայաստանի առողջավայրերի կառուցապատման տեսական և գործնական խնդիրներով, բնակելի շենքերի տիպաբանությամբ: Հեղինակ է մի շարք գիտական աշխատությունների: Պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով:


Առողջարան Հանքավանում (շին. սկսվել է 1972-ին, ճարտ. Մ. Գ. Մ ի ք ա յ ե լ յ ա ն)

**ՄԻՔԱՅԵԼՅԱՆ** Միքայել Հովհաննեսի [1879, գ. Ագարակ (այժմ՝ ՀՍՍՀ Ղափանի շրջանում)—1943, Թբիլիսի], հայ սովետական քանդակագործ: Սովորել է Պետերբուրգի Շտիգլիցի նկարչական դպրոցում (1897), ապա՝ Գեղարվեստի ակադեմիայում (1898—1900): 1901—02-ին կատարելագործվել է Հռոմում: 1903-ից ապրել և ստեղծագործել է Թիֆլիսում: Կերտել է կերպավորման հավաստիությամբ, ընկալման անմիջականությամբ առանձնացող դիմանկարներ, ժանրային ստեղծագործություններ: Աշխատանքներից են՝


Մ. Մ ի ք ա յ ե լ յ ա ն. «Կոտրված կժով աղջիկը», երանգավորված գիպս (1907, Հայաստանի պետական պատկերասրահ, Երևան)

Խ. Աբովյանի, Մ. Նալբանդյանի, Րաֆֆու, Ծերենցի, Ղ. Աղայանի, Սիրանույշի դիմաքանդակները (բոլորը՝ գիպս), Վ. Ի. Լենինի կիսանդրին (1920), «Բեռնակիրը» (1903), «Կուժը կոտրած աղջիկը» (գիպս, 1906), «Կինտոն» ժանրային քանդակները: Ակտիվորեն մասնակցել է Հայ արվեստագետների միության հիմնադրմանը (1916, Թիֆլիս), միության կազմակերպած ցուցահանդեսներին: Քանդակագործի «Ժամկոչ Սաքան» (բրոնզ, 1903), «Ասեղ թելող պառավը» (գիպս, 1906) և այլ գործեր գտնվում են Հայաստանի պետ. պատկերասրահում (Երևան): *Ե. Մարտիկյան*

**ՄԻՔԱՅԵԼՅԱՆ** Նանսեն Հարությունի [ծն. 25.5.1931, գ. Կարծախ (Ախալքալաքի շրջանում)], հայ սովետական բանաստեղծ: Ավարտել է Երևանի համալսարանի բանասիրական ֆակուլտետը (1958): Հրատարակել է «Իմ գարունը» (1958), «Խոյանքներ» (1960), «Կապույտ կրակներ» (1963), «Արև իմ, սեր իմ» (1967), «Քարե քնքշանք» (1971), «Կարոտի աշխարհ» (1975), «Լեռան աստղեր» (1980), մանուկ-

ների համար՝ «Քուչիկն ու փուչիկը» (1959), «Հուշարարն ու Ազատը» (1964), «Շտապ օգնություն» (1968), «Արևի բանալին» (1972), «Ճուտիկների մանկապարտեզ» (1978) ժողովածուները: Գրում է նաև երգիծական գործեր: Հեղինակ է բազմաթիվ գրական պարոդիաների, շարժերի, էպիգրամների, կալամբուրների, ֆելիետոնների: Մ-ի ստեղծագործությունն աչքի է ընկնում թեմաների արդիականությամբ, բանաստեղծական ձևերի թարմությամբ:

**ՄԻՔԱՅԵԼՅԱՆ** Սուրեն Աղասիի [ծն. 6.10. 1911, գ. Նոր Կյանք (այժմ՝ ՀՍՍՀ Արթիկի շրջանում)], կուսակցական և պետական աշխատող: ՀՍՍՀ վաստ. մանկավարժ (1959): ՍՄԿԿ անդամ 1931-ից: Ավարտել է Երևանի Խ. Աբովյանի անվ. մանկավարժական ինստ-ի պատմության ֆակուլտետը: 1933—37-ին եղել է ՀԼԿԵՄ Արթիկի և Իջևանի շրջկոմների առաջին քարտուղար, 1937-ից՝ ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար: 1939—47-ին Մ. կուսակցական ղեկավար աշխատանք է տարել ՀԿԿ Կենտկոմում, 1939-ին՝ կազմ. բաժնի վարիչ: 1940—48-ին՝ Կենտկոմի քարտուղար: 1948—55-ին եղել է ՀՍՍՀ լուսավորության մինիստր, 1955-ից ՀՍՍՀ պրոֆեսիոնալ-տեխ. կրթության պետ. կոմիտեի նախագահն է: ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ (1940—48), ՍՍՀՄ II—III գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Պարգևատրվել է Լենինի, Հոկտեմբերյան հեղափոխության, Հայրենական պատերազմի I աստիճանի, Աշխատանքային կարմիր դրոշի 2, «Պատվո նշան» շքանշաններով:

**ՄԻՔԱՅԵԼՅԱՆ** (Թ ե ր լ ե մ ե զ յ ա ն) Վահե Միքայելի (1.1.1900, Վան — 10.2. 1967, Երևան), հայ սովետական թարգմանիչ: Ավարտել է Թիֆլիսի օտար լեզուների ինստ-ը (1927): Բնագրից թարգմանել է ֆրանս. գրողների՝ Պ. Մերիմեի («Կարմեն», 1936), Գ. Ֆլոբերի («Տիկին Բովարի», 1937), Վ. Հյուգոյի («Թշվառներ», հ. 1—5, 1940—51), Ա. Դոդեի, Օ. դը Բալզակի, Ստենդալի և ռուս գրողների՝ Ա. Գրիբոյեդովի («Ճանապարհորդի նոթեր», 1945), Ա. Չեխովի («Ընտիր երկեր», 1948), Մ. Գորկու («Երկերի ժողովածու», հ. 6—7, 1951), Մ. Լերմոնտովի, Ա. Կուպրինի, Մ. Բուբենովի, Կ. Կորոլենկոյի ստեղծագործություններից, ինչպես նաև սովետական և արտասահմանյան գրականության շատ ուրիշ գործեր:

**ՄԻՔԱՅԵԼՅԱՆ** Վարդգես Ալեքսանի [ծն. 5.12.1924, գ. Ղազանչի (ՀՍՍՀ Ղուկասյանի շրջանում)], հայ սովետական պատմաբան: Պատմ. գիտ. դ-ր (1966), պրոֆեսոր (1978): ՍՄԿԿ անդամ 1951-ից: Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին (1941—45): 1952-ին ավարտել է Երևանի համալսարանի միջազգային հարաբերությունների ֆակուլտետը: 1959—72-ին եղել է ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստ-ի ավագ գիտաշխատող: 1972-ից ՀՍՍՀ ԳԱ «Լրաբեր հասարակական գիտությունների» ամսագրի գլխավոր խմբագիրն է: Մ-ի պատմագիտական ուսումնասիրություններն ընդգրկում են Հայաստանի գյուղացիության դրության և պայքարի հարցեր, հայ-ռուս հարաբերությունների, հայերի արտագաղթերի և հայկ. առանձին գաղութների պատմության, նշանավոր գործիչների կյանքի ու գործունեության լուսաբանում են:

*Երկ.* Հայաստանի գյուղացիությունը սովետական իշխանության համար մղված պայքարի ժամանակաշրջանում (1917—1920 թթ.), Ե., 1960: Ղրիմի հայկական գաղութի պատմություն, Ե., 1964: Ղրիմի հայկական գաղութի պատմություն (1801—1917), Ե., 1970: Հայիտալական առնչություններ (Ջենովական փաստաթղթերը ղրիմահայերի մասին), Ե., 1974: Տովակալ Լ. Մ. Սերեբրյակով (Ղազար Մարկոսի Արծաթագործյան), Ե., 1979: На крымской земле (история армянских поселений в Крыму), Е., 1974.

**ՄԻՔԱՅԵԼՅԱՆ** Վերգինե Գևորգի [ծն. 27.12.1903, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)], հայ սովետական մանրէաբան: Բժշկ. գիտ. դ-ր (1950), պրոֆեսոր (1952), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1961): ՍՄԿԿ անդամ 1937-ից: 1927-ին ավարտել է Երևանի համալսարանի բժշկ. ֆակուլտետը: 1929—35-ին եղել է Երևանի քաղաքաժնի համաճարակագետը, 1935—38-ին և 1944—1950-ին աշխատել Երևանի բժշկ. ինստ-ի համաճարակագիտության ամբիոնում, 1938—44-ին՝ ինստ-ի դիրեկտոր, 1950—54-ին՝ դիրեկտորի տեղակալ, 1952—54-ին՝ սննդի հիգիենայի, 1954—1976-ին՝ մանրէաբանության ամբիոնների վարիչ, 1975-ից՝ գիտական խորհրդատու: Աշխատանքները վերաբերում են Հայաստանում աղիքային (որովայնային տիֆ, պարատիֆեր, դիզենտերիա) և մանկական վարակիչ հիվանդությունների համաճարակագիտության ուսումնասիրությանը, կանխարգելիչ միջոցառումների մշակմանը, իմունիտետի վրա անտիբիոտիկների ազդեցության և իմունոգենեզում հիպոթալամուսի դերի բացահայտմանը: Մ. Ի. Մեչնիկովի անվ. համաճարակագիտության և մանրէաբանության համամիութենական գիտաբժշկական ընկերության վարչության անդամ է, դրա հայկ. բաժանմունքի նախագահը: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի և «Պատվո նշան» 2 շքանշաններով:

**ՄԻՔԱՅԵԼՅԱՆ** Քրիստափոր (18.10.1859, Վերին Ագուլիս — 4.3.1905, Սոֆիա), հայ հասարակական-քաղաքական գործիչ, *դաշնակցության* հիմնադիրներից: Ավարտել է Թիֆլիսի Ուսուցչական ինստ-ը (1880): 1880—84-ին ուսուցչություն է արել Վերին Ագուլիսում, ապա՝ Թիֆլիսում: 1880-ական թթ. հարել է *նարոդնիկությանը*: 1882—83-ին մասնակցել է ազգայինդեմոկրատական, նարոդնիկական ուղղություն ունեցող Թիֆլիսի գաղտնի խմբակի ստեղծմանը: Վերջինիս քայքայումից (1886) հետո բռնել է զուտ ազգայնական շարժման ուղին: 1890-ին Թիֆլիսում Ս. *Զավարյանի* և Մ. *Զորյանի* (Ռոստոմ) հետ հիմնադրել է դաշնակցություն կուսակցությունը, 1891-ին՝ նրա օրգան «Դրոշակ» թերթը: Գրել է «Ամբոխային տրամաբանություն» (հրտ. 1909) աշխատությունը, որտեղ պաշտպանել է ցույցերի, արշավանքների, տեռորիստական գործողությունների միջոցով Արևմտյան Հայաստանն ազատագրելու դաշնակցության ծրագիրը: Զոհվել է ինքնաշեն ռումբի փորձարկման ժամանակ:

*Ե. Սահակյան*

**ՄԻՔԵԼԱՁԵ** Եվգենի Սեմյոնի (1903—1937), վրացի սովետական դիրիժոր: Վրաց. ՍՍՀ արվեստի վաստ. գործիչ (1936): Ավարտել է Լենինգրադի կոնսերվատորիան (աշակերտել է Ն. Ա. Մալկոյին և Ա. Վ. Գաուկին): 1931—37-ին եղել է Վրաց. օպերայի և բալետի թատրոնի դիրիժոր (1933-ից՝ գլխավոր դիրիժոր): Մ-ի ղեկավարությամբ կատարվել են ռուս և արևմտաեվրոպական կոմպոզիտորների, Զ. Փալիաշվիլու «Աբեսալոմ և Էթերի», «Դաիսի», Ա. Սպենդիարյանի «Ալմաստ» օպերաները, Ա. Բալանչիվաձեի «Լեռների սիրտը» բալետը են: Մ-ի կատարողական ոճը բնորոշվել է մեկնաբանության թարմությամբ, գեղեցիկ, արտահայտիչ ժեստով: Հանդես է եկել նաև որպես սիմֆոնիկ դիրիժոր: Դասավանդել է Թբիլիսիի կոնսերվատորիայում: Աշակերտներից են՝ Դ. Միրցխուլավա, Ա. Նասիձեն, Դ. Շիկանյանը և ուրիշներ:

**ՄԻՔԵԼԱՆՋԵԼՈ** Բ ո ւ ո ն ա ր ր ո տ ի [Michelangelo Buonarroti, այլ ձևով՝ Մ ի ք ե լ ա ն ի ո լ ո դ ի Լ ո դ ո վ ի կ ո դ ի Լ ի ո ն ա ր դ ո դ ի Բ ո ւ ո ն ա ր ր ո տ ո Ս ի մ ո ն ի (6.3.1475, Կապրեզե, այժմ՝ Կապրեզե-Միքելանջելո, Տոսկանա — 18.2.1564, Հռոմ)], իտալացի քանդակագործ, գեղանկարիչ, ճարտարապետ և բանաստեղծ: Մ-ի ստեղծագործություններում, որոնք կանխորոշել են ինչպես XVI դ. եվրոպական, այնպես էլ հետագա հարյուրամյակների արվեստի զարգացումը, արտացոլվել են ոչ միայն մարդկային խոր պաթոսով առլեցուն Բարձր Վերածննդի իդեալները, այլև Ուշ Վերածննդի հումանիստական մշակույթի ճգնաժամի ողբերգական զգացողությունը: Սովորել է գեղանկարիչ Գիռլանդայոյի (1488—89) և քանդակագործ Բերտոլդո դի Ջովաննիի (1489—90) մոտ, սակայն նրա ստեղծագործական դիմագծի ձևավորմանը մեծապես նպաստել են *Ջոտտոյի*, *Դոնատելլոյի*, *Մազաչչոյի* ստեղծագործությունները, անտիկ քանդակագործությունը: Արդեն պատանեկան շրջանի ստեղծագործություններում [«Տիրամայրը աստիճանների մոտ», «Կենտավրոսների կռիվը», երկուսն էլ՝ մարմար (ինչպես և հետագայում ստեղծված Մ-ի բոլոր աշխատանքները), մոտ 1490—92, Կասա Բուոնարրոտի, Ֆլորենցիա] ուրվագծվել են Մ-ի ստեղծագործության հիմնական գծերը՝ մոնումենտալություն, կերպարների պլաստիկական հզորություն ու դրամատիզմ, ակնածանք մարդու գեղեցկության հանդեպ: Հռոմում անտիկ հուշարձանների ազդով ընտեղծել է «Բաքոսը» (1496—97, Ազգային թանգարան, Ֆլորենցիա) և «Ողբ առ Քրիստոս» (1498—1501, Ս. Պետրոսի տաճար, Հռոմ) խմբաքանդակը, ուր հումանիստական գաղափարներ է ներմուծել զոթական ավանդական սխեմայի մեջ: 1501-ին Մ. վերադարձել է Ֆլորենցիա և աշխատել հանրապետության քաղաքացիների արիությունը խորհրդանշող Դավթի (1501—04, Գեղարվեստի ակադեմիայի պատկերասրահ, Ֆլորենցիա) վիթխարի արձանի վրա, որը կամքի անհուն ուժի ու հերոսական պոռթկումի մարմնացում է: Պալացցո Վեկքիոյի («Ճակատամարտ Կաշինի տակ», 1504—06, Մ-ի կոմպոզիցիան



Միքելանջելո Բուոնարոտիի դիմաքանդակը (հեղինակ՝ Դանիել դա Վոլտերրա, 1565)

հայտնի է կրկնօրինակներով) համար արված որմնանկարի նախանկարում Մ. ձգտել է մարմնավորել հանրապետության պաշտպանությանը զորավիգ քաղաքացիներին: 1505-ին Հուլիոս II պապը Մ-ին հրավիրել է Հռոմ, ուր նրան հանձնարարվել է ստեղծել պապի դամբարանը, աշխատանքները ձգձգվել են, նախագծերը փոխվել, և շինությունը (Մ-ի մտահղացած քանդակագործակ ա ն-ճ ա րտ ա ր ա պ ե տ ա կան վեհասքանչ համալիրից կառուցվել է միայն մի հատված) ավարտվել է միայն 1545-ին: Դամբարանի համար Մ. ստեղծել է մի շարք արձաններ, մասնավորապես՝ «Մովսեսը» (1515—16, Սան Պիետրո ին Վինկոլի եկեղեցի, Հռոմ), որը դարձել է իրագործված տարբերակի վերջին, կենտրոնական բաղադրամասը: Մ-ի Մովսեսը տիտանական կերպար է՝ կամքի հզոր ուժով ու խառնվածքով: Այստեղ նա առաջին անգամ կիրառել է քանդակի ընկալման ժամանակային ասպեկտը: Դամբարանի համար նախատեսված է եղել նաև ստեղծել ստրուկների երկու արձաններ (այսպես կոչված, «Ապստամբած ստրուկը» և «Մեռնող ստրուկը», երկուսն էլ՝ 1513—1516, Լուվր, Փարիզ), որոնք մտահղացվել են ուժեղ, գեղեցիկ, կապանքները կտրատող պատանին հակադրել նույնքան գեղեցիկ, սակայն անզոր պատանուն, ինչպես նաև չորս ստրուկների քանդակներ (մնացել են անավարտ, մոտ 1532—34, Գեղարվեստի ակադեմիայի պատկերասրահ, Ֆլորենցիա): Այս գործերը ստեղծելիս հեղինակը աշխատել է միայնակ: Դա վերաբերում է նաև նրա մոնումենտալ գեղանկարչական ստեղծագործություններին, որոնցից ամենանշանակալին Վատիկանի Սիքստինյան կապելլայի վիթխարի առաստաղապատկերն է (1508—12): Առաստաղապատկերի գաղափարական բարդ հյուսվածքում առանձնանում են հետևյալ թեմաները. պատկերներ աստվածաշնչյան «Գիրք ծննդոց»-ի՝ «Լույսի բաժանումը խավարից» մինչև «Նոյի արբելը», թաղի աջ և ձախ կողմերում՝ մարգարեներ և սիբիլլաներ, առագաստներում, մահիկներում և լյունետներում Քրիստոսի նախնիներն են ու աստվածաշնչյան դրվագներ: Որմնանկարներն ընկալվում են որպես մարդու հզոր և ֆիզիկական գեղեցկության նվիրված հիմն, նրա ստեղծագործական անսահման հնարավորությունների հավաստում: 1520-ական թթ. Մ-ի աշխարհզգացողությունում ի հայտ են եկել ողբերգական երանգներ: Այդ տարիների հիշարժան աշխատանքներից է Ֆլորենցիայի Սան Լորենցո եկեղեցու Նոր ավանդատան (*Մեդիչիների* կապելլայի) կառուցումն ու արձաններով հարդարումը: Մեռած երկու դքսերի կերպարները իդեալականացված են և նրանց ոտքերի մոտ պառկած, օրվա պահերը պատկերող երկու զույգ ֆիգուրների («Ցերեկ», «Գիշեր», «Առավոտ», «Երեկո») հետ խորհրդանշում են Իտալիայի ազատության վախճանն ու վերածնության իդեալների ճգնաժամային վիճակը: Ֆլորենցիան կայսեր և պապի բանակների կողմից պաշտպանելու ընթացքում (1529) հանրապետությունը Մ-ին նշանակել է ամրաշինական աշխատանքների ղեկավար: Քաղաքի անկումից հետո Մ. աշխատել է Մեդիչիների կապելլայի վրա, 1534-ին՝ վերջնականապես տեղափոխվել Հռոմ: Այստեղ Սիքստինյան կապելլայի խորանի համար կատարել է «Ահեղ դատաստան» (1536—41) վիթխարի որմնանկարը, ուր կենտրոնական տեղ է գրավում պատանի, գեղեցիկ Քրիստոսը՝ որպես



Միքելանջելո. Մեդիչիների մատուռը (1520—34) Ֆլորենցիայի Սան Լորենցո եկեղեցում

մարդկության անողոք դատավոր: Վատիկանի Պաոլինա կապելլայի («Պետրոսի խաչելությունը» և «Պողոսի դարձը», 1542—1550) որմնանկարները աչքի են ընկնում տանջալի ողբերգականությամբ և մասամբ կանխորոշում են *բարոկկոյի* որմնանկարչության զարգացումը: Մինչև կյանքի վերջը Մ. զբաղվել է քանդակագործությամբ, սակայն իր անձնական դամբարանի համար արված «Ողբ առ Քրիստոս»-ը ջարդել է իր ձեռքով (հավաքել և ավարտին է հասցրել Մ-ի աշակերտ Թ. Կալկանյին, մինչև 1550—55, Սանտա Մարիա դել Ֆյորե տաճար, Ֆլորենցիա), իսկ «Պիետա Ռոնդանինի»-ն (1555—64, Հին արվեստի թանգարան, Միլան) մնացել է նախնական մշակման փուլում: Այս ստեղծագործություններում առանձնակի ուժով են արտացոլվում ծերունի Մ-ի սպիրիտ ալիստական տրամադրությունները: Սակայն ուշ շրջանում նա կերպարվեստով սակավ է զբաղվել, մեծ մասամբ իրագործել է շինարարական վիթխարի խնդիրներ: Մ-ի ճարտ. արվեստը բնորոշվում է պլաստիկ արտահայտչականությամբ: Լուսաստվերով հարուստ որմերի ռելիեֆները, ուժեղ արտահայտված



Միքելանջելո. Հռոմի Կապիտոլիում հրապարակը (շին. սկսվել է 1530-ական թթ.)

որմնամույթերը, ցցուն շրջակալները ստեղծում են զանգվածների դինամիկ հակադրություն: Չնայած Մ-ի շինությունները հող են նախապատրաստել բարոկկոյի ճարտարապետության համար, այդուամենայնիվ դրանց հոյակերտ տեկտոնիկան մնում է որպես զուտ ռենեսանսյան առանձնահատկություն: Դեռևս 1523—34-ին Մ-ի նախագծով Ֆլորենցիայում կառուցվել են Լաուրենցիանա գրադարանի շենքը (1568-ին նրա մանրակերտով ավարտվել է գրադարանի նախասրահը): 1546-ից մինչև կյանքի վերջը Մ-ի հիմնական աշխատանքը Հռոմի Ս. Պետրոսի տաճարի և Կապիտոլիումի անսամբլի կառուցումն էր՝ որպես «հավերժական քաղաքի» հոգևոր ու աշխարհիկ կենտրոն (երկու շինություններն էլ ավարտվել են Մ-ի մահից հետո՝ նրա նախագծով): Կապիտոլիումի հրապարակը հատակագծում սեղանակերպ է: Այն եզրափակվում է Պահպանողականների պալատով, երկու կողմերում համաչափորեն տեղադրված պալատներով, որոնց բացվածքում լայն աստիճաններ են, իսկ կենտրոնում վեր է խոյանում հեծյալ Մարկոս Ավրելիոսի արձանը (161—180): Կապիտոլիումում Մ. առաջին անգամ ստեղծել է դեպի քաղաքի տարածքը բացվող հրապարակ՝ դրսևորելով ճարտ-յան օպտիկական ընկալման խոր իմացություն: Ս. Պետրոսի տաճարը կառուցելիս Մ. պահպանել է Բրամանտեի հատակագծին բնորոշ կենտրոնակազմ սկզբունքը, սակայն հասել է կոմպոզիցիայի և այլ մասերի նկատմամբ գմբեթածածկ խաչաձև տարածության գերիշխող դիրքի միաձուլությանը: Մ-ի կենդանության օրոք կառուցվել է տաճարի արլ. մասը, իսկ գմբեթը տեղադրվել է Մ-ի մահից հետո՝ Ջակոմո դելլա Պորտայի կողմից՝ որոշ չափով երկարացնելով նրա համամասները: Ծերության շրջանում Մ. հաճախ է դիմել քերթողական արվեստին: Մ-ի քնարերգությունը աչքի է ընկնում խոհականությամբ ու վեհ ողբերգականությամբ. այդ բանաստեղծություններում նա սերը մեկնաբանում է որպես մարդու հավերժ ձգտում դեպի գեղեցիկն ու ներդաշնակը, պատմում անքարյացակամ միջավայրում արվեստագետի միայնության մասին ևն: Մ-ի նախասիրած բանաստեղծական ձևերից են մադրիգալն ու սոնետը, որոնք չեն տպագրվել նրա կենդանության օրոք: Նրա «Բանաստեղծություններ»-ի առաջին տպագրությունը իրագործվել է 1623-ին: Մ-ի ստեղծագոր-

ծությունը նպաստել է *մաններիզմի* զարգացմանը, սակայն ի տարբերություն նրա արվեստը միակողմանիորեն ըմբռնող մաներիստների, մինչև վերջ նա իր ստեղծագործություններում պահպանել է սերը մարդու, հավատը նրա մեծության ու գեղեցկության հանդեպ:

Պատկերազարդումը տես 625-րդ էջից առաջ՝ ներդիրում:

Գրկ. Либман М. Я., Микеланджело Буонарроти, [М., 1964]; Ротенберг Е. И., Микеланджело, М., 1964; Лазарев В. Н., Микеланджело, в его кн.: Старые итальянские мастера, М., 1972, с. 447—606.

**ՄԻՔՍԻՆՆԵՐ** (Myxini), *անծնոտների* դասի ողնաշարավոր կենդանիների ենթադաս: Մարմնի երկարությունը 45—70 *սմ* է: Բերանը և կենտ քթանցքը շրջապատված են մսալի 6—8 բեղիկներով: Արյունատար համակարգը բաց է, ունեն 1 հիմնական և 3 լրացուցիչ սիրտ: Հայտնի է Մ-ի 15 (ՍՍՀՄ-ում՝ 1) տեսակ, տարածված համաշխարհային օվկիանոսի բարեխառն և մերձարևադարձային ջրերում: Գիշատիչ են, սնվում են գլխավորապես թուլացած ձկներով, որոնց մարմնի մեջ են խրվում հզոր, ատամնավոր լեզվի օգնությամբ: Որոշ Մ. վնաս են հասցնում ձկնորսությանը:

**ՄԻՔՍՈԲԱԿՏԵՐԻԱՆԵՐ** (Myxobacteria), (< հուն. μύξα — լորձ և *բակտերիա*), ցուպիկաձև, 0,5×3—15 *մկմ* չափերով, գրամ-բացասական, գլխավորապես աէրոբ, հետերոտրոֆ միաբջիջ օրգանիզմներ: Տեսակների մեծ մասն ունի կորիզ: Ընդունակ են պտղամարմին առաջացնելու: Շարժվում են «ռեակտիվ» սկզբունքով՝ լորձ արտադրելով: Բազմանում են ձըգմամբ կամ երկայնակի կիսվելով: Որոշ գիտնականներ Մ-ին դասում են կապտականաչ ջրիմուռների, մյուսները՝ նախակենդանիների շարքը: Լայնորեն տարածված են բնության մեջ՝ հողում, գոմաղբում, օրգ. մնացորդներում և մասնակցում են դրանց աերոբ քայքայմանը:

**ՄԼԱԿԱՅԻՆ ՏԵՆԴ**, պապատաչի տենդ, եռօրյա տենդ, վիրուսային հիվանդություն: Հարուցիչը ֆիլտրվող վիրուսն է, որը մարդու օրգանիզմ է թափանցում Phlebotomus pappatasi *մլակների* խայթման ժամանակ: Գաղտնի շրջանը տևում է 3—6 օր: Հիվանդությունն սկսվում է հանկարծակի, ուղեկցվում ջերմության բարձրացմամբ (39,5—40,5°C, տևում է 3—5 օր), գլխացավերով: Ցավեր են առաջանում նաև աչքերը շարժելիս, ձկնամկանների, թիկունքի և սրբանոսկրի շրջաններում: Վիրուսն արյան մեջ հայտնաբերվում է հիվանդության սկզբից 24—36 *ժ* անց: Մ. տ. տարածված է տաք երկրներում (Մերձավոր Արևելք, Արևելյան Աֆրիկա, Կենտրոնական և Հարավային Ամերիկա, Եվրոպայի միջերկրածովյան ափեր), ՍՍՀՄ-ում օջախներ են նկատվել Ղրիմում, Միջին Ասիայում, Անդրկովկասում և Կովկասում, սակայն մլակների ոչնչացման արմատական միջոցառումների շնորհիվ դրանք վերացվել են: Տեղական բնակչությունը Մ. տ-ի հանդեպ իմունիտետ է ձեռք բերում մանկական տարիքում հիվանդանալուց հետո կամ համաճարակային օջախ գալուց 1—2 տարի անց: Զանգվածային բռնկումը նկատվում է այլ երկրներից ժամանած ընկալունակ բնակչության մեջ:

**ՄԼԱԿՆԵՐ** (Phlebotomidae), արյունածուծ երկթևանի միջատների ընտանիք: Մարմինը խավոտ է, դեղին կամ մոխրագույն, երկարությունը՝ 1,2—3,7 *մմ*: Բեղիկները 16-հատվածանի են, թևերը՝ մարմնից վեր բարձրացած, կնճիթը՝ երկար: Ցերեկը թաքնվում են, ակտիվ են մթնշաղին և գիշերը: Արուները սնվում են բույսերի և պտուղների հյութերով, էգերը՝ սողունների, թռչունների, կաթնասունների և մարդու արյունով: Ապրում են տարբեր կենդանիների բներում, քարանձավներում, ժայռերի ճեղքերում, գոմերում և



Մլակ

այլուր: Թրթուրները զարգանում են քայքայվող օրգ. նյութերում: Տարածված են բոլոր մայր ցամաքների տաք շրջաններում (մոտ 500 տեսակ): ՍՍՀՄ-ում հանդիպում են 2 սեռի ավելի քան 50 տեսակ: ՀՍՍՀ-ում Մ. տարածված են տափաստանային և կիսաանապատային շրջաններում, ծովի մակերևույթից մինչև 1800 *մ* բարձրության վրա: Մ. ակտիվ են մայիսից մինչև սեպտեմբեր—հոկտեմբեր: Սովորաբար տարեկան տալիս են 2 սերունդ: Ձմեռում են թրթուրները: Մ. *մլակային տենդի* (պապատաչի) և *լեյշմանիոզների* հարուցիչների փոխանցողներ են: Պայքարի միջոցները. պատերի ճեղքերի, կրծողների բների վերացում, կրծողների բնաջնջում, ինսեկտիցիդներ:

*Հ. Տերտերյան*

**ՄԼԵՀ** (ծն. թ. անհտ.—1175), Կիլիկյան Հայաստանի Մեծ իշխան 1169-ից: *Լևոն Ա Ռուբինյանի* որդին: Հաջորդել է եղբորը՝ *Թորոս Բ*-ին: Հոր գերեվարության տարիներին (1137—43) ապրել է Եդեսիայում՝ քեռու մոտ: Այնուհետև իր եղբայր Ստեփանեի հետ ավելի քան երեք տասնամյակ գլխավորել է հայկ. բանակը, եռանդուն աջակցել Թորոս Բ-ին՝ երկրի ազատագրման և պետականության կայունացման գործերում: Հռչակվել է քաջությամբ ու հմուտ դիվանագիտությամբ: 1160-ական թթ. 2-րդ կեսին, արտաքին քաղաքականության հարցերում (ձգտել է դաշնակցել արլ. դրացիների հետ և նրանց զինակցությամբ պայքարել խաչակիր ասպետների, սելջուկյան թուրքերի և բյուզանդացիների դեմ) գժտվելով Թորոս Բ-ի հետ, արտաքսվել է երկրից Թորոս Բ-ի մահից հետո Մ. վերադարձել է հայրենիք, գրավել իշխանանիստ Վահկան և հռչակվել Հայոց Մեծ իշխան: 1171—72-ին, երկրից վտարելով խաչակիր ասպետներին ու ֆրանկ հոգևորականներին, բռնագրավել է Կիլիկիայում նրանց հատկացված կալվածները: Պարտության է մատնել խաչակիրներին աջակցող Անտիոքի դքսության և Երուսաղեմի թագավորության միացյալ ուժերին: 1173-ին Հալեպի ամիրա Նուր ադ Դինի զինական օգնությամբ ջախջախել է բյուզանդական զորքը, գրավել Տարսոն, Ադանա և Մոպսեստիա քաղաքները, ազատագրել Դաշտային Կիլիկիայի մեծ մասը: Նույն թվականին Կիլիկյան Հայաստանի նոր մայրաքաղաք է հռչակել վերակառուցած Սիսը: Մ. դաժանորեն պատժել է իր քաղ. գծին ընդդիմացող հայ իշխաններին և լատինամոլ կղերականներին՝ հարուցելով նրանց դժգոհությունը: Ի վերջո Մ. դարձել է պալատական դավադրության զոհ: Ստեփանեի որդի Ռուբեն Բ դավադիրներին դատապարտել է մահապատժի, իսկ Մ-ի դին, իր զենք ու զրահով, ամփոփել Մեծքար վանքում:

Գրկ. Ալիշան Ղ., Սիսուան, Վնտ., 1885: Микаелян Г. Г., История Киликийского армянского государства, Е., 1952.

*Մ. Կատվալյան*

**ՄԼԵՀ** (ծն. թ. անհտ.—մոտ 973), հայազգի բյուզանդական ռազմական գործիչ: Եղել է սխոլերի դոմեստիկոս (սպարապետ) և գլխավորել բյուզանդական զորքը արաբների դեմ կռվում: 973-ին գրավել է Մելիտենեն, հարձակվել է Ամիդի վրա, բայց գերվել և տարվել է Բաղդադ, որտեղ մահապատժի է ենթարկվել:

**«ՄԼՔԵ ԹԱԳՈՒՀՈՒ ԱՎԵՏԱՐԱՆ»**, IX դարի հայկական ձեռագիր մատյան: Պահպանվում է Վենետիկի Մխիթարյանների (Ս. Ղազար կղզի) մատենադարանում (ձեռ. № 1144/86): Ըստ առաջին կազմողի թողած հիշատակարանի, ստեղծվել է 862-ին: Գրված է ընտիր մեսրոպյան բոլորանկյուն երկաթագրով՝ մագաղաթյա թերթերի վրա: Ունի վեց խորան, մեկ տեբրունական նկար («Համբարձում») և չորս ավետարանիչների պատկերներ: Վաղ շրջանի մանրանկարչությանը հատուկ կիսախորաններ և գլխազարդեր չունի: «Մ. թ. Ա.» կոչվում է Վասպուրականի Մլքե թագուհու (հավանաբար Գագիկ Արծրունու թագավորի երկրորդ կնոջ) անունով, որի մասին կա հիշատակություն: Գագիկ Արծրունին «Մ. թ. Ա.» նվիրաբերել է Վարագա Ս. Նշան եկեղեցուն: Այն տարբեր ժամանակներում (սկսած 1208-ից) մի քանի անգամ փրկագնվել է նվաճողներից և վերադարձվել եկեղեցուն: «Մ. թ. Ա.» 1830-ին Վենետիկի Մխիթարյաններին է նվիրաբերել պատրիարք Գրիգոր Ներսիսյանցը:

«Մ. թ. Ա.» համարվում է վաղ միջնադարյան մանրանկարչության կարևոր աղբյուրներից: Ժամանակագրական կարգով հաջորդում է *«Էջմիածնի Ավետարանի»* վերջում կցված VII դ. մանրանկարներին: Մանրանկարներն ունեն կոթողային բնույթ (մարմար և պորփյուր հիշեցնող զանգվածային սյուներ, ծիածանաձև կամարներ, ատամնաձև խարիսխներ խորաններում, հորինվածքի կանոնավոր ներդաշնակ երկրաչափական կառուցվածք «Համբարձման» մեջ՝ խմբերի սիմետրիկ դասավորումով, նստած կամ կանգնած ավետարանիչների վսեմ կեցվածքներ՝ անտիկ նախաբեմի ֆոնի վրա): Խորանների կամարադաշտերում կոկորդիլոսների, հավալուսնների, ձկների, նավակների և ձըկ-

նորսների պատկերներով Նեղոս գետի տեսարանները հիշեցնում են Հս. Աֆրիկայի անտիկ խճանկարները, արձագանքում ալեքսանդրիական մոտիվներին (հելլենիստական Հայաստանում հայտնի է Գառնիի բաղնիքի խճանկար ծովային տեսարանը): Երկու նստած և երկու կանգնած ավետարանիչները մատնանշում են նախապատկերամարտյան ակունքները (586-ի ասորական «Ռաբուլայի Ավետարանը»): «Մ. թ. Ա.»-ի մանրանկարները բացառիկ տեղ են գրավում հայ մանրանկարչության և գրքարվեստի պատմության մեջ՝ իբրև հնագույն պատկերազարդ գրքի փայլուն նմուշ:

Պատկերազարդումը տես 632-րդ էջից հետո՝ ներդիրում:

*Գրկ.* Ճանաշյան Մ., Հայկական մանրանկարչություն, հ. 1, Վնտ., 1966:

*Վ. Ղազարյան*

**ՄԽԱՄԵՂՄՈՒՄ**, համաձուլվածքների ջերմամշակման տեսակ. կատարվում է մխումից հետո և իրենից ներկայացնում մինչև որոշ ջերմաստիճան տաքացում՝ հաջորդական հովացումով (օդում կամ ջրում): «Մ.» տերմինը կիրառում են գլխավորապես պողպատի ջերմամշակման դեպքում: Գունավոր համաձուլվածքների Մ. սովորաբար անվանում են արհեստական ծերացում: Մխման հետևանքով պողպատը ձեռք է բերում ոչ միայն կարծրություն, այլ նաև փխրունություն, որը ցանկալի չէ: Բացի այդ, մեծ կարծրությունը դժվարացնում է դետալների վերջնական մեխանիկական մշակումը: Մխված պողպատի փխրունությունը փոքրացնելու և պլաստիկությունը բարձրացնելու համար այն ենթարկում են Մ-ման: Տարբերում են ցածր (120—250°C), միջին (300—400°C) և բարձր (450—650°C) Մ.:

**ՄԽԻԹԱՐ** (ծն. և մահ. թթ. անհտ.), հայ ճարտարապետ: 1263-ին *Շնորհավոր Աղբար* ճարտարապետի հետ կառուցել է Գոմուր գյուղի (այժմ՝ ՀՍՍՀ Ազիզբեկովի շրջանում) խաչքար-մահարձանը: Երկթեք ծածկով ողմնափակ գեղաքանդակ խաչքարին արլ-ից կից է ուղղանկյուն հատակագծով, կիսաշրջանաձև փոքրիկ աբսիդով թաղակապ մատուռ-դամբարանը: Նրա միակ՝ հս. դռան ճակտոնապատը զարդարված է խաչաձև, ծաղկեհյուս քանդակնե-



Մխիթար և Շնորհավոր Աղբար. Գոմուր գյուղի խաչքար-մահարձանը (1263) հյուսիս-արևելքից

րով ու ստալակտիտներով: Արլ. ճակատի լուսամուտից վեր տեղադրված հարթաքանդակում պատկերված է Պռոշյանների տոհմական զինանշանը՝ թևատարած արծիվ՝ խոյը ճանկերում բռնած: Խաչքարը և մատուռը ճարտ. միասնություն են կազմում, հորինվածքով ու կերպարով եզակի՝ միջնադարյան Հայաստանի հուշակոթողների շարքում: Խաչքար-հուշարձանի շինարարական արձանագրությունում նշվում է, որ նույն ճարտարապետները գյուղում կառուցել են նաև եկեղեցի ու ժամատուն (չեն պահպանվել):

*Գրկ.* Եղիազարյան Հ., Ազիզբեկովի շրջանի կուլտուրայի հուշարձանները, Ե., 1955: Բարխուդարյան Ս., Միջնադարյան հայ ճարտարապետներ և քարգործ վարպետներ, Ե., 1963:

*Մ. Հասրաթյան*

**ՄԽԻԹԱՐ Ա ԳՌՆԵՐՑԻ**, տեր Մխիկ (ծն. թ. անհտ.—1355), Հայոց կաթողիկոս 1341-ից: Նախապես Կիլիկիայի Բարձրբերդ գավառի Գռների վանքի առաջնորդն էր: Հակված լինելով Հռոմի պապի հետ հարաբերություններ ունենալուն՝ Մ. Ա Գ. դեմ էր Հայոց եկեղեցու մեջ կաթոլիկ ծեսերի գործադրմանը: Նրա օրոք 1345-ին Սսում գումարված եկեղեցական ժողովը, Եվրոպայից օգնություն ստանալու հույսով, թեև ձևականորեն, ընդունել է կաթոլիկ եկեղեցու հետ միանալու Հռոմի պապի առաջարկը, սակայն ժողովի որոշումները, հանդիպելով հայ ժողովրդի դիմադրությանը, չեն իրագործվել:

**ՄԽԻԹԱՐ ԱՅՐԻՎԱՆԵՑԻ**, Մխիթար Երևանցի (ծն. և մահ. թթ. անհտ.), XIII դարի հայ մատենագիր, պատմիչ, բանաստեղծ, մանկավարժ, եկեղեցական գործիչ, երաժիշտ, գրիչ: Ծնվել է Երևանում: 1267—70-ական թթ. հայտնի է եղել իր գիտա-մանկավարժական գործունեությամբ: 1279-ից գլխավորել է Այրիվանքի ուսումնագիտական կենտրոնը (տես *Այրիվանքի դպրոց*), միաժամանակ մասնակցել Պռոշյան իշխանների տիրույթների հոգևոր կենտրոններում (Թանահատ, Սրկղունիք ևն) կատարվող աշխատանքներին:

Մ. Ա-ու գրական-մատենագիտական ժառանգության մեջ արժեքավոր է «Նոր պատմություն» խորագրով (պայմանականորեն կոչվել է նաև «Պատմություն Հայոց», «Պատմություն ժամանակագրական») երկասիրությունը (հրատարակվել է հայերեն, ռուս. և ֆրանս.), որտեղ համառոտակի ներկայացված է հայ ժողովրդի պատմությունը՝ մինչև 1289-ը: Այն մեծ արժեք ունի մի շարք հազվագյուտ տեղեկություններով, որոնց համար հիմք ծառայած սկզբնաղբյուրները մեզ չեն հասել: Աշխատության առաջին մասում զետեղված են վրացիների, աղվանների, հույների, պարսիկների, սելջուկների, թաթարների, հռոմեացիների պատմությանը վերաբերող կարևոր տեղեկություններ (թագավորների, իշխանների, խաների, կաթողիկոսների, պապերի, պատրիարքների, եպիսկոպոսների ժամանակագրական անվանացանկերը ևն): Մ. Ա-ու պատմագրական կարևոր գործերից են Ալեքսիանոս կրոնավորի և VIII դ. հայ նշանավոր մատենագիր Ստեփանոս Սյունեցու վարքերը: Նրա գրական ժառանգության մեջ մեծ տեղ են գրավում չափածո ստեղծագործությունները, որոնցից հայտնի են 21 գանձ, 4 տաղ և աղոթքներ: Գանձագրության մեջ առաջին անգամ օգտագործել է կանոնավոր տաղաչափություն, հանգավորում: Մ. Ա-ու 15 գանձերի աքրոստիքոսները տեղեկություններ են բովանդակում նաև նրա կազմած բանաստեղծությունների ժողովածուի՝ «Գանձարանի» մասին (այն մեզ չի հասել. այլ ընդօրինակությամբ, ցրիվ եկած, պահպանվել է հետագա գանձարաններում): Մ. Ա-ու գանձերն ունեն նաև պատմական սկզբնաղբյուրի նշանակություն: Դրանցում նկարագրվում են զանազան իրադարձություններ: Կարևոր է նաև Մ. Ա-ու կազմած գիտ. ժողովածուն՝ հայտնի «Ճառընտիր» անունով (գրված է Այրիվանքում, 1283-ին), ուր զետեղված են իր ժամանակի բարձրագույն դպրոցներում սովորողների համար անհրաժեշտ շուրջ 100 գիրք: Այն միակ ժողովածուն է, ուր տեղ են գտել մայր և թարգմանական գրականությունից հայտնի 13 խոշոր հեղինակի 43 անուն աշխատություն՝ ամբողջական ընդօրինակված բնագրերով: Մ. Ա-ու «Տոմարական տեսություն» աշխատությունից պահպանվել են առանձին հատվածներ՝ միահյուսված նրա «Նոր պատմություն» աշխատության բնագրին: Մ. Ա. գրել է նաև ճառեր, քարոզներ և Ստեփանոս Սյունեցուն նվիրված շարական: Միաժամանակ հորինել է իր գրած գանձերի, տաղերի, օրհնության երգերի և շարականի երաժշտությունը:

*Երկ.* Պատմութիւն Հայոց, Մ., 1860:

*Գրկ.* Հովսեփյան Գ., Մխիթար Այրիվանեցի, Երուսաղեմ, 1931: Հարությունյան Է., Մխիթար Այրիվանեցու «Գանձարանը», «ՊԲՀ», 1975, № 3: Նույնի, Մխիթար Այրիվանեցու «Ճառընտիր» ժողովածուի առնչությունը «Սարկավագյան» ցուցակի հետ, «ԼՀԳ», 1976, № 12:

*Է. Հարությունյան*

**ՄԽԻԹԱՐ ԱՆԵՑԻ**, Երեց (ծն. և մահ. թթ. անհտ.), XII դ. 2-րդ կեսի հայ պատմիչ: Եղել է Անիի Կաթողիկե եկեղեցու (մայր տաճար) ավագերեցը: Հառիճի վանահայր Գրիգոր վարդապետի խնդրանքով գրել է հայոց պատմություն, որն սկսում է Պարույրի գահակալությունից (մ. թ. ա. VII դ.) և հասցնում մինչև խաչակրաց արշավանքները (XI—XII դդ.): Այդ երկը բաղկացած է եղել 3 մասից, բայց մեզ է հասել միայն մի հատված առաջին մասից, որը հայտնաբերել և հրատարակել է Ք. Պատկանյանը: Մ. Ա-ուց պահպանվել է նաև Մուհամմադ (Մահմեդ) մարգարեի մասին մի զրույց, որը նույն բովանդակությամբ կրկնվում է Վանական Վարդապետի և Վարդան Արևելցու երկերում: Մ. Ա-ու «Պատմութիւն»-ը թեև հիմնականում քաղված է նախորդ պատմիչների երկերից, զուրկ չէ պատմական արժեքից: Մ-ի մյուս երկասիրությունները չեն պահպանվել:

*Երկ.* Պատմութիւն, ՍՊԲ, 1879:

*Գրկ.* Զարբհանալյան Գ., Հայկական հին դպրության պատմութիւն (Դ—ԺԳ դար), Վնտ., 1886, էջ 701—707:

*Ա. Տեր-Ղևոնդյան*

**ՄԽԻԹԱՐ ԱՆԵՑԻ** (ծն. և մահ. թթ. անհտ.), հայ գրիչ և մանրանկարիչ: Ապրել և ստեղծագործել է XIII դ. վերջին և XIV դ. կեսերին: Հակոբ քահանայի և Սեղա խաթունի որդին: Սկզբնական կրթությունն ստացել է Հոռոմոսի վանքում: Գրչության արվեստով զբաղվել է նախ Հոռոմոսի վանքում, ապա՝ Սուլթանիայում (Իրան): Ձեռագրեր է նկարազարդել նաև Սուլթանիա եկած Գլաձորի մանրանկարիչ *Ավագի* հետ. ձեռագրերի զարդանկարները կատարել է Մ. Ա., իսկ տերունական պատկերները՝ Ավագը (ձեռ. №№ 1941, 4429):

Մ. Ա-ու անունով մեզ հայտնի է հինգ ձեռագիր, որոնցից չորսը գտնվում են Երեվանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանում (Հռոմոսի վանքում ընդօրինակված՝ Սամուել Անեցու «Հաւաքմունք ի գրոց պատմագրաց», ԺԳ դ., ձեռ. № 3613, և Սուլթանիայում ընդօրինակված՝ 1321 թ. Ժողովածու, ձեռ. № 2961, 1338 թ. Աստվածաշունչ, ձեռ. № 4429, 1356—1357 թթ. Ավետարան, ձեռ. № 7740): Երուսաղեմում է գտնվում 1356 թ. Ավետարանը (Ս. Հակոբյանց վանքի մատենադարան, ձեռ. № 1941): Մ. Ա-ու պատկերազարդած ձեռագրերում մասամբ զգացվում է Ավագի և նաև նոր միջավայրի ազդեցությունը:

*Գրկ.* Հովսեփյան Գ., Մխիթար Անեցի գրիչ և նկարիչ, «Հասկ» հայագիտական տարեգիրք, Անթիլիաս, 1948, էջ 192—221:

*Ա. Գևորգյան*

**ՄԽԻԹԱՐ ԳՈՇ** [1120-ական թթ., գ. Գանձակ (այժմ՝ Կիրովաբադ)—1213, Նոր Գետիկ վանք (այժմ՝ Գոշավանք, Իջևանի շրջանի Գոշ գյուղում)], հայ մտածող-գիտնական, օրենսդիր, առակագիր, մանկավարժ, հասարակական գործիչ: Սովորել սկսել է ծննդավայրում: Չափահաս դառնալով՝ ձեռնադրվել է կուսակրոն քահանա: Աշակերտել է Հովհաննես Տավուշեցուն և ուրիշ գիտնականների, ստացել վարդապետի կոչում: Այնուհետև Մ. Գ. գնացել է Կիլիկիա. թաքցնելով վարդապետական աստիճան ունենալը, ուսանել է Սև լեռան երևելի գիտնականների մոտ և վերստին ստացել վարդապետի աստիճան: Վերադառնալով հայրենիք՝ սկզբում ապրել է Գանձակում, ապա տեղափոխվել Խաչեն, այստեղից էլ՝ Գետիկ վանքը: Որոշ ժամանակ անց երկրաշարժից ավերվել են վանքն ու շրջակա գյուղերը: Ամիրսպասալար Զաքարե (տես *Զաքարե Բ Մեծ*) և Իվանե Զաքարյան (տես *Իվանե Ա*) իշխանների հովանավորությամբ և օժանդակությամբ Գետիկից ոչ հեռու՝ Տանձուտա ձորում կառուցել է Նոր Գետիկ վանքը և հանգրվանել այնտեղ: Մ. Գ-ի իմաստության համբավն այնքան է հռչակվել, որ շատերը (նույնիսկ վարդապետներ) հեռավոր վայրերից եկել են աշակերտելու նրան: Մեծարվել է «այր իմաստուն և հեզ, վարդապետական ուսմամբ հռչակեալ», «մեծ վարդապետ», «հռչակաւորն և մեծիմաստն գիտութեամբ»: Մ. Գ. մեծ հեղինակություն է վայելել ոչ միայն մտավորականների, այլև ժամանակի քաղ. ու պետ. գործիչների շրջանում, եղել է Զաքարե Երկայնաբազուկի խոստովանահայրն ու խորհրդատուն: Միջնադարում նրա մասին պատմվել են ավանդություններ, որոնց մեջ նա սրբացվել է:

Մ. Գ-ի գրչին են պատկանում մատենագրության զանազան ճյուղերին վերաբերող մոտ մեկ տասնյակ աշխատություններ. «Համառօտ մեկնութիւն մարգարէութեանն Երեմիայի», «Ողբք ի վերայ բնութեանս՝ ի դիմաց Ադամայ առ որդիս նորա», «Յայտարարութիւն ուղղափառութեան հաւատոյ ընդդէմ ամենայն հերձուածողաց՝ ի խնդրոյ մեծ զօրավարին Զաքարէի և եղբօր իւրոյ» («Արարատ», ամսագիր, 1900—1901), «Թուղթ խրատականք», «Շարք հայրապետացն Աղուանից», աղոթքներ, «Վկայութիւն սրբոյն Խոսրովայ», առակներ, «Դատաստանագիրք հայոց» (հրատարակված են վերջին յոթը, իսկ երկրորդը մեզ չի հասել): Ուշագրավ են «Յայտարարութիւն»-ը, որ Զաքարեին և Իվանեին ուղղված գրություն (նամակ) է, որով հեղինակը հորդորել է նրանց մեղմելու հայ և վրաց եկեղեցիների տարբերությունների պատճառով եղած բամբասանքների ազդեցությունը այդ երկու ժողովուրդների քաղ. համակեցության վրա, և «Շարք հայրապետացն Աղուանից»-ը, միակ աղբյուրը, որտեղ համառոտ շարադրված է Աղվանքի XI—XII դդ. պատմությունը:

Բացառիկ արժեք են ներկայացնում *Մխիթար Գոշի Դատաստանագիրքն* ու առակների ժողովածուն: Եթե Մ. Գ. հասարակական կյանքում տեղի ունեցած փոփոխությունները, մարդկային-ընկերակցական նոր առաջ եկած հարաբերությունները Դատաստանագրքում աշխատում է կարգավորել օրենսդրական միջոցներով, ապա առակներում նույն նպատակին ձգտում է հասնել խրատական միջոցներով: Մ. Գ-ի առակների նյութը հիմնականում հասարակական ու կենցաղային խնդիրներն են, դասակարգերի, դասերի ու խավերի, անհատների փոխհարաբերության հարցերը, որոնք նոր էին հայ գրականության մեջ: Այստեղ արտացոլված է դարաշրջանի հասարակության պատկերը բազմազան գծերով: Առակագիրը շոշափում է սոցիալական խնդիրներ, որով նրա ժողովածուն առանձին կարևորություն է ստանում ժամանակի սոցիալ-պատմական իրադրության պարզաբանման համար: Մի շարք առակներում երևում է հասարակական շերտավորումը և սոցիալական պայքարի առկայությունը: Մարդիկ դատում ու դատապարտում են իշխաններին, տրտնջում թագավորներից. նույնիսկ՝ աստծուց: Սակայն, հեղինակի կարծիքով, ժողովուրդը պետք է հնազանդվի իշխողներին, իսկ վերջիններս պարտավոր են նրան պահպանել օտար կեղեքիչներից ու վտանգից: Մ. Գ. ձգտում է մեղմել մի կողմից՝ հնազանդյալների ու տերերի հակամարտությունը, մյուս կողմից՝ աշխարհիկ ու հոգևոր իշխողների հակասությունները՝ ազգային ուժերը համախմբելու և արտաքին թշնամու դեմ կենտրոնացնելու նպատակով, մի նպատակ ու պահանջ, որով պայմանավորված էր նաև նրա Դատաստանագրքի երևան գալը: Առակներում ևս Մ. Գ. կենտրոնացած ուժեղ պետականության գաղափարն է արծարծում: Այստեղ այլաբանորեն կոնկրետ մարդն է նկարագրվում՝ իբրև գյուղացի, քաղաքացի, ազնվական-իշխան, արհեստավոր, կրոնավոր, թագավոր ևն՝ իր կեցության առանձնահատկություններով: Մ. Գ. իր ժողովածուն կազմել է ուսուցողական նպատակներով: Նրա համար առակը հրապարակախոսության միջոց է՝ դրվատելու առաքինությունները, ծաղրելու պակասությունները, հիմարությունն ու տգիտությունը, խարազանելու չարիքը: Ժողովածուն ունի կուռ կառուցվածք. պարունակում է 190 առակ, որոնք երեք գլխավոր բաժիններում («առակք բարոյականք», «առակք առասպելականք» և «առակք ստեղծականք») դասավորված են որոշակի կարգով ըստ գործող անձանց կամ նյութի՝ երկնային մարմիններ ու երկիր, տնկիներ ու ծառեր, բույսեր ու ծաղիկներ, սերմեր ու բանջարներ, մրրգեր, լեռ, գետ, աղբյուր, ջրային ու ցամաքային կենդանիներ, թռչուններ, մարդիկ: Բարոյականք կոչված առակների նյութը բույսերի ու կենդանիների հատկություններն են, բարքը, որ հեղինակը դնում է իբրև առակի պատմողական մաս և դրանից հանում բարոյախոսական եզրակացություն: Այդ պատճառով էլ այս խմբի առակները մեծ մասամբ սակավ գործողությամբ այլաբանական համեմատություններ են: Գործողությունն ուժեղ է առասպելական և ստեղծական կոչված առակներում, որոնց նյութը քաղված է կենդանիների ու մարդկանց կյանքից: Բոլոր դեպքերում պատմվածքի մասը ծավալուն չէ: Առասպելական, մասամբ և ստեղծական առակներում Մ. Գ. վերցնում է այնպիսի գործող անձինք, որոնց սովոր անունները պատրաստի հասկացություններ են. աղվես՝ խորամանկություն, նապաստակ՝ վախկոտություն, արջ (կամ գայլ)՝ միամտություն-հիմարություն ևն: Նրա առակների ժողովածուն առաջին արձակ ստեղծագործությունն է հայ գրականության մեջ, որ գրված է իբրև գրական-գեղարվեստական երկ: Այս իմաստով Մ. Գ. գեղարվեստական արձակի հիմնադիրն է հայ գրականության մեջ:

Մ. Գ-ի ժողովածուով XII դ. հայ գրականության մեջ մուտք է գործել ժող. բանարվեստի տեսակը՝ առակը, որն իր հետ բերել է նաև ժող. ոգի ու մտածողություն, ազդարարելով գրականության աշխարհականացման մի կարևոր փուլ:

Մ. Գ-ի առակներն առաջին անգամ հրատարակվել են 1790-ին Վենետիկում, թարգմանվել են ֆրանս. և ռուս.:

*Երկ.* Կաթողիկոսք և դէպք Աղուանից աշխարհին ի մեջ ԺԲ դարու, տես Ալիշան Ղ., Հայապատում, մաս 2, Վնտ., 1901: Առակներ: Տեքստը ձեռագրերի համեմատությամբ և ներածությունը Էմ. Պիվազյանի, Ե., 1951: Գիրք դատաստանի, Ե., 1975:

*Գրկ.* Աբեղյան Մ., Երկեր, հ. 4, Ե., 1970: Марр Н., Сборники притч Вардана, ч. 1, Исследование, СПБ, 1899; Орбели И., Басни средневековой Армении, Избр. труды, т. 1, М., 1968.

*Էմ. Պիվազյան*

**ՄԽԻԹԱՐ ԳՈՇԻ ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ**, հայ իրավունքի հուշարձան. կազմել է *Մխիթար Գոշը*՝ 1184-ին: Ճիշտ անվանումն է «Գիրք Դատաստանի»: Պահպանվել են բազմաթիվ ձեռագրեր (շուրջ 40-ը՝ Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարանում): Գրվել է դասակարգային հակասությունները մեղմացնելու, ժողովրդի ազգային-ազատագրական ոգին բարձրացնելու նպատակով: Հայտնի են դատաստանագրքի Ա, Բ, Գ խմբագրությունները: Ա խմբագրությունը բաղկացած է նախադրությունից և բուն դատաստանագրքից (251 հոդված): Բ խմբագրությունը բաժանվում է աշխարհական (130 հոդված) և եկեղեցական մասերի (124 հոդված): Գ խմբագրությունը նույնանում է Ա-ի հետ, սակայն համառոտ է և տարբերվում է ըստ

էության: Դատաստանագրքի աղբյուրներն են՝ *մովսիսական օրենքները*, հայոց *կանոնական իրավունքը*, հայ *սովորութային իրավունքը*: Ընդգրկում է ֆեոդալական իրավունքի բոլոր ճյուղերն ու ինստ-ները, հասարակական հարաբերությունների բազմապիսի բնագավառները: Որպես տիպիկ ֆեոդալական օրենսգիրք, ամրապնդում է տիրապետող կարգերն ու դասային արտոնությունները, պաշտպանում եկեղեցու դիրքը: Ըստ «Գիրք Դատաստանի»-ի դատական համակարգը հետևյալն է՝ պետ. դատարաններ (թագավորական, թագավորին առընթեր, իշխանական, իշխանին առընթեր, ստորին), ֆեոդալական (տերունական, դասային), կորպորատիվ (համայնքային, համքարային, եղբայրությունների), եկեղեցական (կաթողիկոսական, եպիսկոպոսական, վարդապետական, քահանայական) և արտակարգ: Դատավարությունը մեղադրական-մրցակցական է, առանց ծայրահեղ ձևապաշտության: Դատավարությունն սկսվում է, երբ կա մասնավոր մեղադրող (հայցվոր), իշխանության մարմինները դատ են սկսում եզակի դեպքերում: Դատական ապացույցներ էին՝ խոստովանությունը, վկաների ցուցմունքները, երդումը (առանձին դեպքերում), գրավոր փաստաթղթերը և գիտակ անձանց (փորձագետների) եզրակացությունը: Հանցագործություն է համարվել ամեն մի գործողություն՝ ուղղված գոյություն ունեցող հասարակական հարաբերությունների, պետության, հանրային կառավարման, սեփականության, անձի կյանքի ու առողջության, եկեղեցու, տիրող գաղափարախոսության դեմ: Հանցագործության պատճառները, ինչպես ամենուր, այնպես էլ Հայաստանում, ամենից առաջ, սոցիալ-տնտեսական էին, չնայած պատճառներ էին համարվում նաև (այդ թվում՝ ըստ «Գիրք Դատաստանի»-ի) մարդու մեղսունակությունը, կրոնական ջերմեռանդության թուլացումը, «առ աստված հավատի տկարությունը», այդ ամենի հետևանքով առաջացած բարքերի խաթարումը: Մինչև ուշ միջնադար հանցակազմի ենթակա, այսինքն՝ հանցագործություն կատարող են համարվել նաև միջատները, կենդանիները, նույնիսկ՝ անշունչ առարկաները: «Գիրք Դատաստանի»-ն, ելնելով սուբյեկտիվ մեղսայնացման սկզբունքից, դատապարտության ենթակա է համարում ոչ թե վտանգավոր արարքը ընդհանրապես, այլ այն արարքը, որը կատարվել է մեղքով: Ըստ «Գիրք Դատաստանի»-ի անմեղսունակությունը նույնպես դատական պատասխանատվությունը բացառող հանգամանք է: Դատաստանագրքում մեղքն ընկալվում է երկու իմաստով՝ կրոնական և իրավական, առաջինը որպես աստվածադիր, մյուսը՝ մարդադիր օրինականության խախտում: Ընդունելով, որ մեղքն իրավական իմաստով միաժամանակ մեղք է կրոնական իմաստով (հակառակ իմաստով՝ ոչ միշտ), Մխիթար Գոշը, համապատասխանաբար, նախատեսում է երկու բնույթի պատիժ՝ հոգևոր-եկեղեցական և մարմնական: Առաջինը նշանակում էին միայն եկեղեցական, երկրորդը՝ աշխարհիկ դատարանները: Մխիթար Գոշն ընդունել է հետևյալ պատիժները՝ հոգևոր-եկեղեցական (բանադրանք, նզովք, ապաշխարություն իր տեսակներով, աստիճանազրկում, պաշտոնազրկում), մարմնական-նյութական [մահապատիժ, մարմնական պատիժներ (ծեծ, անդամահատում), ազատությունը զրկող կամ սահմանափակող, գույքային-դրամական]: Գտնելով, որ պատժի ներգործությունը չի որոշվում խստությամբ, Մխիթար Գոշը ընդունում է հանցանքի ու պատժի համամասնության, իր ժամանակի համար առաջադիմական, սկզբունքը, «իսկ պատիժն ըստ վնասուն համեմատ լիցի» («Գիրք Դատաստանի», էջ 150): «Գիրք Դատաստանին» ուշագրավ դրույթներ է արտահայտում նաև ամուսինների անձնական և գույքային հարաբերությունների կարգավորման բնագավառում: Տղամարդը տան գլուխն է, նրան են ենթարկվում ընտանիքի բոլոր անդամները, նաև՝ կինը: Սակայն տղամարդու իշխանությունը բռնակալական կամ անկաշկանդ կամայական չէ: Ինչպես տղամարդու, այնպես և կնոջ իրավունքները զուգորդվում են ամուսնու և ընտանիքի մյուս անդամների նկատմամբ ունեցած որոշակի պարտականություններով: Ամուսինը պարտավորվում է հարգել կնոջը, նրա նկատմամբ լինել մարդկային, հոգալ նրա կարիքները, ապահովել նյութական բարեկեցությունը, հիվանդանալիս խնամել, պահանջել ամուսնական հավատարմություն ևն: Կնոջը ծեծելու համար ամուսինը ենթակա է դատական պատասխանատվության: Մխիթար Գոշը կնոջ իրավունքների հարաբերական հավասարությունը պայմանավորում է գույքային հարաբերություններով: Ամուսինների մինչամուսնական շրջանի գույքը նրանց առանձին, ամուսնության ընթացքում ձեռք բերածը՝ համատեղ սեփականությունն է: Ամուսնանալու պահից կինը ուներ նյութական-գույքային հենարան, որը ամուսնու հանդեպ և ընտանիքում կնոջ իրավունքների երաշխիքն էր:

«Գիրք Դատաստանի»-ն բացառիկ կարևոր նշանակություն ունի հայ ժողովրդի ներքին կյանքին վերաբերող տեղեկություններ հաղորդելու առումով: Այն հայկ. իրավա-քաղաքական մտքի և ընդհանրապես միջնադարի իրավական հուշարձանների շարքում խոշորագույններից է, ամփոփում է ժամանակի համար շատ առաջավոր դրույթներ, որոնք այժմեական են: Օրինակ, Մխիթար Գոշը գտնում է, որ պատիժը պետք է ունենա ոչ թե տանջանք պատճառելու և վրեժ լուծելու, այլ խրատելու, ուղղել-դաստիարակելու նպատակ: Այդ իմաստով Մխիթար Գոշը միջնադարյան հումանիզմի ներկայացուցիչներից է: «Գիրք Դատաստանի»-ն մերժում է կրոնական անհանդուրժողականությունը, պաշտպանում մահմեդականի արժանապատվությունը, կրոնական պատկանելիության համար չի սահմանում պատիժներ:

«Գիրք Դատաստանի»-ն կիրառվել է նաև Հայաստանի սահմաններից դուրս այն գաղութներում, որտեղ հայ համայնքը ձեռք էր բերել ներքին ինքնավարության իրավունք: Սուդանում այսօր էլ հայ համայնքի անդամների քաղաքացիական գործեր լսելիս պետ. դատարանը կիրառում է «Գիրք Դատաստանի»-ն:

«Գիրք Դատաստանի»-ն առաջին անգամ հայերեն հրատարակել է Վ. Բաստամյանցը՝ 1880-ին: Այն ունի մի քանի այլալեզու խմբագրություններ: Առաջին անգամ թարգմանվել է լատիներեն (կրճատված, տեղին և պայմաններին համապատասխան փոփոխված), որը լեհահայոց գաղութը 1519-ին ներկայացրել է Սիգիզմունդ I-ի հաստատմանը, իր ազգային օրենքներով ղեկավարվելու համար (տես *Լեհահայոց Դատաստանագիրք*): Լատիներեն խմբագրությունը հրատարակել է Բիշոֆը (1862): 1519—23-ին լատիներեն խմբագրությունը թարգմանվել է լեհերեն (հրատարակել են Կ. Վույցիցկին՝ 1843-ին, Մ. Բարոնչը՝ 1869-ին և Կրակովի լեհական օրինաց հավաքի երրորդ հատորում, 1906), որը նույն ժամանակ թարգմանվել է ղփչաղերեն (հայատառ): Ղփչաղերեն է թարգմանվել (ոչ լրիվ) նաև բուն «Գիրք Դատաստանի»-ն: Դատաստանագիրքը թարգմանվել է վրացերեն՝ կազմելով *Վախթանգի օրենքների* «Հայկական իրավունք» բաժինը, որի վրացերեն խմբագրությունը հրատարակել են Լ. Մելիքսեթ-Բեգը՝ 1928-ին, և Ի. Դոլիձեն՝ 1963-ին: Ռուսերեն թարգմանությունը առաջին անգամ հրատարակվել է 1828-ին:

*Գրկ.* Մ խ ի թ ա ր Գ ո շ, Գիրք Դատաստանի (աշխատասիր. Խ. Թորոսյանի), Ե., 1975: Армянский судебник Мхитара Гоша (пер. Паповяна А. А. с древнеармянского, ред., вступительная статья и примечания Арутюняна Б. М.), Е., 1954; K a r s t J., Grundriss der Geschichte des armenischen Rechtes «Zeitschrift für Vergleichende Rechtswissenschaft», 1906, Bd 19.

*Խ. Թորոսյան*

**ՄԽԻԹԱՐ ԿԱԶՄԻՉ** (ծն. և մահ. թթ. անհտ.), XII դարի հայ քարգործ վարպետ: Աշխատել է Սանահինում: Գործերից նշանավոր է Գրիգոր Տուտեորդու հուշարձան-խաչքարը Սանահինի վանքի Ս. Հարություն եկեղեցու հս. պատի տակ (1184):



Մ խ ի թ ա ր Կ ա զ մ ի չ և Ա վ ե տ ի ս. Գրիգոր Տուղեորդու հուշարձան-խաչքարը (1184, Սանահինի վանքի Ս. Հարություն եկեղեցո հյուսիսային պատի տակ

Խաչքարի պատվանդանը չորս կողմից մշակված է, յուրաքանչյուր երեսին կան երկսյուն կամարներով երկուական խորշաններ: Սեղանաքարը երիզված է «սելջուկյան շղթա» ունեցող քիվով, որի վրա դրված է ավելի նեղ պատվանդան. վերջինի վրա բարձրանում է գեղաքանդակ խաչքարը: Հուշարձանի ետին երեսին գըրված է Տուտեորդու հիշատակարան-արձանագրությունը, ըստ որի, նույն թվականներին նորոգվել է Կաթողիկե եկեղեցին, որին հավանաբար մասնակցել է Մ. Կ-ի օգնական (կամ արձանագրության փորագրիչ) Ավետիսը:

Գրկ. Ղաֆադարյան Կ., Սանահինի վանքը և նրա արձանագրությունները, Ե., 1957:

**ՄԽԻԹԱՐ ՀԵՐԱՑԻ** [մոտ 1120, Հեր (Խոյ)—1200], հայ բժիշկ, բնագետ և փիլիսոփա: Հայ դասական բժշկության հիմնադիրը: Մասնագիտական կրթությունն ստացել է Կիլիկյան Հայաստանում: Գիտա-բժշկական գործունեությունը ծավալել է Սիս մայրաքաղաքում ու կաթողիկոսանիստ Հռոմկլա ամրոցում՝ *Ներսես Շնորհալու* և *Գրիգոր Դ Տղայի* հովանավորությամբ: Տիրապետել է հունարենին, արաբերենին, պարսկերենին: XII դ. 60-ական թթ. արդեն ուներ մեծ բժշկապետի համբավ: Բժշկ. գործունեության հետ միաժամանակ լուրջ հետաքրքրություն է ցուցաբերել մարդակազմության, ախտաբանության, ակնաբուժության, դեղագիտության ու բնագիտության հարցերի նկատմամբ, դարձել հայ բժշկության մի շարք ճյուղերի հիմնադիր և ստեղծել արժեքավոր երկեր, որոնցից պահպանվել են սոսկ մասունքներ (Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարան, ձեռ. №№ 1494, 1770, 573, 9393 ևն): Աչքի մասին Մ. Հ-ու ուսմունքը (որը հետագայում զարգացրեց *Ամիրդովլաթ Ամասիացին*) և աչքի հիվանդությունների (եղջերաթաղանթի բորբոքում, տրախոմա, գլաուկոմա) կլինիկական նկարագրություններն ու բուժման համար առաջադրած բարդ դեղատոմսերը գիտական մեծ հետաքրքրություն ունեն: Դեղագիտության ու դեղագործության բնագավառների հայ ժող. ու դասական բժշկության փորձն ի մի բերելով՝ այս շրջանում Մ. Հ. արդեն շարադրել էր իր մեծահամբավ «Ախրապատինը» (մեզ չի հասել): XII դ. 80-ական թթ. Գրիգոր Դ Տղայի պատվերով Մ. Հ. գրել է Դաշտային Կիլիկիայի ճահճոտ վայրերում լայնորեն տարածված և «երկրային ախտաբանություն» համարվող տենդային հիվանդություններին նվիրված *«Ջերմանց մխիթարություն»* աշխատությունը («անուանեցաք «Ջերմանց մխիթարութիւն», զի սա մխիթարէ զբժիշկն ուսմամբ, իսկ զհիվանդն՝ առողջութեամբ»): Գիրքը գրված է ժամանակի խոսակցական լեզվով՝ «գեղջուկ և արձակ բարբառով, զի դիւրահաս լիցի ամենայն ընթերցողաց», և նվիրված է տենդային հիվանդությունների դասակարգման, պատճառագիտության, ախտածնության, մահճաբուժության (կլինիկայի), կանխարգելման ու բուժման հարցերին: Զբաղվել է այդ հիվանդությունների ախտաբանության հարցերով և ըստ ախտաբանական առանձնահատկությունների ներկայացրել ջերմերի դասակարգումը: Զարգացնելով տենդային հիվանդությունների վերաբերյալ ուսմունքը՝ նա տարբերակել է երեք տեսակի ջերմեր՝ «միօրյա», «բորբոսային» և «հալումաշ» (հեկտիկ): Հետևելով անտիկ բնափիլիսոփայական պնևմատիկ տեսությանը՝ «միօրյա» (թռուցիկ բնույթի) ջերմերը կապել է հոգու (pneuma) ախտահարման հետ: «Բորբոսային» հիվանդությունների բնութագրման հարցում Մ. Հ. ցուցաբերել է ուրույն մոտեցում. անտիկ բժիշկներն այդ հիվանդությունները բացատրում էին չորս հեղուկների կամ հեղահյութերի (humor)՝ արյան, լորձի, դեղին ու սև մաղձերի նեխմամբ: Մ. Հ., չհերքելով հումորալ տեսության ընդհանուր դրույթները, հիշյալ ջերմերի ծագումը բացատրել է արյան, մաղձի և լորձի մեջ «բորբոսային» գործոնի ներթափանցմամբ: Ըստ Է. *Զեյդելի* և Լ. *Հովհաննիսյանի*, մինչմանրէաբանական շրջանի բոլոր պատկերացումներից վարակական պրոցեսի արդի ընկալմանն ամենամոտ կանգնածը «բորբոսի» գաղափարն էր: Մ. Հ-ի կարծիքով «բորբոսային» գործոնը կարևոր դեր է կատարում նաև չարորակ ուռուցքների, մասնավորապես քաղցկեղի, առաջացման գործում: Երրորդ՝ «հալումաշ» խմբի ջերմերի գոյացումը, հեղահյութերից բացի, կապում էր նաև մարմնի պինդ մասերի (ոսկրերի, հոդերի, ջլերի) ախտահարման հետ: Հետագա դարերի հայ բժիշկները (սկսած *Գրիգորիսից*) «բորբոսի» գաղափարը տարածեցին նաև այլ հիվանդությունների վրա և «հալումաշ» ջերմերը նույնպես դասեցին «բորբոսայինների» կարգը: Ջերմերը դասակարգելիս Մ. Հ. զարգացրել է նաև պատճառագիտական ուսմունքը, որը մատերիալիստորեն հիմնավորել է դեռևս *Հիպոկրատը*՝ հիվանդությունների առաջացումը բացատրելով ինչպես արտաքին, այնպես և ներքին միջավայրի (շոգ, ցուրտ, անորակ սննդանյութեր, քիմ. նյութեր, հոգեկան ապրումներ) զանազան վնասակար գործոնների ազդեցությամբ: «Բորբոսային» ջերմերից մեկի առիթով Մ. Հ. զգուշացնում է վարակից զերծ լինելու համար հեռու մնալ հիվանդից: Նրա համոզմամբ վարակ կարող են տարածել նաև կենդանիները, ուստի պետք է օգտագործել միայն առողջ կենդանու կաթը: Սա նոր խոսք էր ժամանակի բժշկության մեջ: Տենդային հիվանդությունների վերաբերյալ Մ. Հ-ու դասակարգումը հենվում էր ոչ միայն ախտաբանական ու պատճառագիտական սկզբունքների, այլև կլինիկական ուսումնասիրության՝ հիվանդի մանրակրկիտ հետազոտման վրա, հաշվի առնելով անամնեստիկ (հիվանդության պատճառը, բնույթը, ուղեկցող երևույթները, հիվանդի տարիքը, խառնվածքը, սովորույթները, կենսական ուժերը, բնակավայրը, կլիմայական պայմանները) և օբյեկտիվ (հիվանդի արտաքին տեսքը, ներքին օրգանների վիճակը, պուլսը, մեզի, խորխի ևնի վիճակը) տվյալները՝ կիրառելով զննման, շոշափման և ընդբախման մեթոդները: Մեծ բժշկապետը տենդային հիվանդություններից զատել է ալերգիաների մի քանի ձևեր (ֆիզիկական, քիմ., սննդային, հոգեկան ևն) և կանխագուշակել ալերգոլոգիայի հետագա զարգացման ուղին: «Բորբոսային» ջերմերը կազմում են երկի հիմնական մասը, ընդգրկում «բորբոսային» ջերմերի, այսինքն՝ բուն վարակիչ հիվանդությունների (մալարիա, տիֆ, սեպտիկ հիվանդություններ, կարմիր քամի, ծաղիկ, պալարախտ ևն) վերաբերյալ տեղեկությունները: Նկարագրել է տենդային հիվանդությունների զարգացման 4 փուլ, որը համապատասխանում է Հիպոկրատի դասակարգմանը, և բուժման ընթացքում հաշվի առել հիվանդի առանձնահատկությունները: Մշակել է համակցված բուժման ուրույն համակարգ, որն ընդգրկում է դեղորայքային, սննդային և ֆիզիկական միջոցները (լոգանք, սառը շփում, մերսում, ինհալացիա): Հատկանշական է նրա առաջարկած դեղորայքային բուժումը, որ հենվում է նախ բույսերի, ապա կենդանական ու անօրգանական նյութերի բուժիչ հատկությունների վրա: Վարակիչ-ալերգիական հիվանդությունների բուժման նպատակով առաջարկել է մի շարք բույսեր. ծաղիկներ (վարդ, մանուշակ, շուշան, նունուֆար), մրգեր (նուռ, փշատ, սալոր, խնձոր), բանջարեղեն (բամիա, ավելուկ, կոտեմ, ռեհան, ծներեկ), վայրի բույսեր (կապար, ուրց, մատուտակ ևն), որոնց մի մասը կիրառվում է նաև սննդաբուժության մեջ: Բժշկության մեջ մեծ տեղ էր հատկացնում ծծմբին, հայքարին, հայկավին (լայնորեն օգտագործվում են ժող. բժշկության մեջ), ցինկին, թանկարժեք քարերին և անօրգանական այլ նյութերի: Մ. Հ-ու բուժական համակարգում կարևոր տեղ ունեն նաև պսիխոպրոֆիլակտիկայի ու պսիխոթերապիայի տարրերը, բժշկի ազդու խոսքը, երաժշտության բուժիչ ուժը ևն: Մ. Հ. հայ միջնադարի բժշկության նորարար էր, կիլիկյան բժշկ. դպրոցի հիմնադիրը, որի ավանդները հետագայում շարունակեցին անվանի բժշկապետներ Ստեփաննոսը, Գրիգորիսը, Ամիրդովլաթ Ամասիացին: Մ. Հ-ու բժշկագիտական երկերում արտահայտվել է նրա մատերիալիստական բնափիլիսոփայական աշխարհայացքը, որն ընդհանուր ոչինչ չունի աստվածաբանության հետ: Հոգին («շունչը») մարդու իսկ մարմինն է, նրա մի մասը և կատարում է «բուսական», «կենդանական» և «իմացական» ֆունկցիաներ: Այդ հասկացություններում չկա ոչինչ գերբնական ու միստիկական: Մարմնի հետ մահանում է և հոգին: Մ. Հ. շեշտում է փորձի դերը գիտական իմացության, առանձնապես բժշկագիտության մեջ, առաջարկում հիվանդության պատճառները բացահայտել փորձնական ճանապարհով: Նա այդ պատճառները փնտրում է իրականության մեջ (արտաքին միջավայր, աշխատանքային պայմաններ ևն): Մ. Հ. թեև չկարողացավ լիովին հրաժարվել միջնադարում դոգմա դարձած հումորալ տեսության դրույթներից, սակայն նրա առաջադրած «բորբոսի» վարկածը վարակիչ հիվանդությունների ու քաղցկեղի առաջացման վերաբերյալ ժամանակակից տեսությունների կանխագուշակումն էր: Զարգացրել է հարուցիչ գործոնների մասին Հիպոկրատի բնափիլիսոփայական ուսմունքը («հակառակը հակառակով» բուժելու) և հիվանդության փուլերի մա-

սին նրա սկզբունքները: Մ. Հ-ու երկերում «մեծ փիլիսոփա Սինայի որդու» (*Աբու Ալի Իբն-Սինա*) «Կանոնից» քաղումները բազմաթիվ են, ու նրա նման Մ. Հ. ևս բնության երևույթների նկատմամբ մատերիալիստական մոտեցում, ինքնուրույն մտածողություն և հելլենիստական դպրության նկատմամբ մեծ սեր է ունեցել: Համաշխարհային բժշկության ու բնագիտության պատմության մեջ բժշկապետի դերը բարձր է գնահատել նրա երկի գերմաներեն թարգմանող Է. Զեյդելը:

Մ. Հ-ու գիտական ժառանգության մեկուկես դար առաջ սկսված ուսումնասիրությունը թևակոխել է մի նոր փուլ. բուսաբուժության բնագավառում մեծ բժշկապետի հարուստ փորձը ժամանակակից բժշկության համար լուրջ ուշադրության և հետազոտման առարկա է դարձել: «Ջերմանց մխիթարություն» աշխատությունն առաջին անգամ հրատարակվել է Վենետիկում՝ 1832-ին, 1955-ին՝ Երևանում (ռուսերեն) ընդարձակ ուսումնասիրությամբ և ծանոթագրություններով:

*Երկ.* Утешение при лихорадках, 2 изд., доп., Е., 1968; Seidel E., Mechitar's des Meisterarztes aus Her «Trost bel Fiebern», Lpz., 1908.

*Գրկ.* Ներսես Շնորհալի, Բանք չափաւ, Վնտ., 1928, էջ 301—324: Ալիշան Ղ., Շնորհալի և պարագայ իւր, Վնտ., 1873, էջ 257—260: Հովնանյան Ղ., Հետազոտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ, մաս 1, տետր 1, Վնն., 1897, էջ 67—91: Կծոյան Ա. Ս., Մխիթար Հերացի, Ե., 1968: Оганесян Л. А., История медицины в Армении, ч. 2, Е., 1946, с. 74—142; Torkomián Y., Un Médecin Arménien du XII Siècle, Mékhithar de Her, «Revue Scientifique», P., 1899, 30 sep. *Ս. Վարդանյան*

**ՄԽԻԹԱՐ ՀՅՈՒՍՆ** (ծն. և մահ. թթ. անհտ.), միջնադարյան հայ ճարտարապետ: 1188—1208-ին կառուցել է *Գոշավանքի* համալիրի մեծ մասը: Մ. Հ-ի կառուցած առաջին՝ Գրիգոր Լուսավորիչ կոչված եկեղեցին (չի պահպանվել) եղել է փայտակերտ (այստեղից էլ՝ նրա «Հյուսն» մականունը), որը Գոշավանքի սան Կիրակոս Գանձակեցին անվանում է «գեղեցկային»: 1191—1196-ին Մ. Հ. կառուցել է Գոշավանքի գլխավոր Ս. Աստվածածին եկեղեցին: Ճարտ-ի բարձր հեղինակության վկայություն է նրան անձնական արձանագրության տեղ հատկացնելը եկեղեցու ներսում: Կիրակոս Գանձակեցու վկայությամբ Մ. Հ. Մխիթար Գոշի հանձնարարությամբ կառուցել է նաև վանքի Ս. Հովհաննես Կարապետ փոքր եկեղեցին, Ս. Առաքելոց և Ս. Հռիփսիմե (մուտքի ճակատի արձանագրության մեջ կառուցման թիվն է ու ճարտ-ի անունը) մատուռները, Ս. Հոգի փայտակերտ և Ս. Համբարձման եկեղեցիները, Ս. Աստվածածին եկեղեցու գավիթը: Վերջինիս ներսում, կամարներից մեկի վրա Մ. Հ-ի թողած հիշատակարան-արձանագրությունն է՝ իր կյանքի ու գործունեության համառոտ ամփոփումը: Մ. Հ. կառուցել է նաև մի այլ քարաշեն ժամատուն՝ փայտակերտ վերնահարկով, սկսել է գմբեթավոր նոր եկեղեցու շինարարությունը, որն ընդհատվել է և ավարտվել միայն 1231-ին: Մ. Հ. միջնադարյան Հայաստանի այն սակավաթիվ ճարտ-ներից է, որն իր ժամանակ արդեն գնահատվել է որպես մշակույթի տաղանդավոր գործիչ, և որի անվան հիշատակությունը պահպանվել է թե՛ իր ստեղծած բազմաթիվ հուշարձանների վրա, թե՛ պատմիչի (Կիրակոս Գանձակեցի) մոտ:

*Գրկ.* Բարխուդարյան Ս., Միջնադարյան հայ ճարտարապետներ և քարգործ վարպետներ, Ե., 1963: *Մ. Հասրաթյան*

**ՄԽԻԹԱՐ ՍԱՍՆԵՑԻ** (Կերմանեցի), (XIII դ. 60-ական թթ., Կերմանց —1337, Մեծոփավանք), մատենագիր, մանկավարժ: Սովորել է Ապահունիքի Կերմանց գյուղում, ապա՝ Քաջբերունիքի Մեծոփավանքում, ուր և ձեռնադրվել է քահանա: 1282—85-ին ուսումը շարունակել է Գլաձորի համալսարանում, աշակերտել Ներսես Մշեցուն և Եսայի Նչեցուն: Որպես համալսարանի առաջին շրջանավարտ նրան շնորհվել է վարդապետական աստիճան: Վերադառնալով Մեծոփավանք ծավալել է գիտամանկավարժական, գրչական և քարոզչական բեղմնավոր գործունեություն: Մ. Ս-ուց մեզ է հասել տասը ձեռագիր, որոնցից չորսը գտնվում է Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանում (№№ 193, 952, 1180, 3606), երկուսը՝ Երուսաղեմում են:

*Գրկ.* Հովսեփյան Գ., Մխիթար Սասնեցի, Վաղ-պատ, 1899: *Ա. Մաթևոսյան*

**ՄԽԻԹԱՐ ՍԵԲԱՍՏԱՑԻ** (7.2.1676, Սեբաստիա —27.4.1749, Վենետիկ), հայ հասարակական, գիտական, մշակութային և եկեղեցական գործիչ, *Մխիթարյան միաբանության* հիմնադիրը: Պետրոսի և Շահրիստանի որդին: Մկրտության անունը՝ Մանուկ: 1685—91-ին սովորել է ծննդավայրի Ս. Նշան, 1691—92-ին՝ Էջմիածնի, Սևանի, Կարինի վանքերում: 1693-ին մեկնել է Բերիա (Քաղիբոն, Հալեպ), ծանոթացել միսիոներների հետ: 1696-ին ձեռնադրվել է քահանա, 1699-ին՝ վարդապետ: Դեռ վաղ տարիքում մտադրվել է հիմնել կրոն. միաբանություն՝ հայ ժողովրդի «հոգևոր և իմացական կարիքները» հոգալու համար: 1697-ին մեկնել է Կ. Պոլիս՝ Խաչատուր Կարնեցու հետ իր ծրագրած միաբանությունը հիմնելու ակնկալությամբ: 1698-ին Մարզվանում և Կարինի Կարմիր (Հնձուց) վանքի դպրոցում զբաղվել է ուսուցչությամբ; 1700-ին վերստին անցել է Կ. Պոլիս, իր շուրջը համախմբել մոտ 15 աշակերտ և գաղտնի, խուսափելով լուսավորչական եկեղեցու հալածանքներից, կաթոլիկություն քարոզել նրանց: Միաժամանակ հրատարակության է պատրաստել կրոն. բնույթի մի քանի գրքեր: 1701-ի սեպտ. 8-ին համախոհների և աշակերտների հետ ժողով է գումարել, հիմնել միաբանություն (Մ. Ս-ու մահվանից հետո կոչվել է նրա անունով), հաստատել կանոնադրությունը: 1703-ին մեկնել է Մորեա (Հին Պելոպոնես) և միաբանության վայր ընտրել Վենետիկին ենթակա Մեթոն բերդաքաղաքը: 1705-ին այցելել է Հռոմ, ձեռք բերել տեղական իշխանության համաձայնությունը՝ Մորեայում վանք հիմնելու համար: 1706-ից իր տաս աշակերտով ձեռնամուխ է եղել վանքի կառուցման աշխատանքներին: Սակայն Մ. Ս. ամբաստանվել է Հռոմի պապի առաջ, որի հետևանքով չեն հաստատվել միաբանության համար իր կազմած կանոնները, և հարկադրաբար ընդունել է Բենեդիկտյան ուխտի կանոնները: Խուսափելով թուրք. առաջիկա հարձակումից՝ Մ. Ս-ու միաբանությունը 1715-ին տեղափոխվել է Վենետիկ և 1717-ի սեպտ. 8-ին ծերակույտի արտոնագրով հաստատվել Ս. Ղազար կղզում: Իր իսկ գծագրերով կառուցել է վանք, եկեղեցի և օժանդակ շինություններ: Այնուհետև համառ ու հետևողական գործունեություն է ծավալել՝ պատրաստելու այնպիսի միաբան-գործիչներ, որոնք ընդունակ լինեն լուսավորություն տարածել հայ ժողովրդի լայն խավերի մեջ: Հաջողությամբ վարել է միաբանության տնտ., վարչա-կազմակերպչական, դաստիարակչական-կրթական կյանքը, զբաղվել գիտա-մատենագիտական աշխատանքներով, ղեկավարել իր սաների բանասիրական հետազոտությունները, ուղենշել նրանց հետագա գիտ. գործունեությունը, կատարել թարգմանություններ, հրատարակել գրքեր:


Մխիթար Սեբաստացի

Մ. Ս. աշխարհաբար հայերենի առաջին քերականության («Դուռն քերականութեան աշխարհաբար լեզուին հայոց», թրքախոս հայերին հասկանալի լինելու համար առաջին մասը շարադրել է թուրքերեն, 1727, երկրորդը՝ հայերեն, անտիպ) հեղինակն է՝ Յո. Շրյոդերի քերականությունից հետո: Նշանակալից երևույթ է «Քերականութիւն գրաբառի լեզուի հայկազան սեռի» (1730, 2-րդ հրտ. «Քերականութիւն գրաբառ լեզուի հայկազեան սեռի», 1770) երկը, որտեղ Մ. Ս. քննել է գրաբարի ձևաբանությունը (խոսքի մասերը, հոլովումը, խոնարհումը), շարահյուսությունը, սահմանել կանոններ, անդրադարձել ուղղագրության, առոգանության և այլ հարցերի: Չնայած հեղինակը խուսափել է լատինաբանությունից (տես *Լատինաբան հայերեն*), այնուամենայնիվ երբեմն տուրք է տվել դրան: Մ. Ս-ու «Քերականութիւն...»-ը դարձել է Անտոնի կաթողիկոսի գրած վրացերենի առաջին քերականության հիմքը: Մ. Ս-ու հայագիտական խոշորագույն ներդրումը «Բառգիրք հայկազեան լեզուի» (հ. 1—2, 1749—69) մեծածավալ աշխատությունն է: Այն ներառնում է ավելի քան 100 հզ. բառահոդված: Մ. Ս. հավաքել է հայ մատենագիրների տպագիր և անտիպ գործերի բոլոր բառերը, բացատրել դրանք, վկայություններով պարզաբանել իմաստները: Բացատրությունների ընթացքում օգտագործել է աշխարհաբարի օրինակներ, հաճախ դիմել է թուրքերենին, հունարենին ու լատիներենին, անդրադարձել բառի ծագումնաբանությանը: Երկրորդ հատորում ամփոփված է նաև Աստվածաշնչի հատուկ անունների, ինչպես նաև աշխարհաբարից գրաբար և

գրաբարից աշխարհաբար բառարաններ: Այն իր ժամանակի՝ նման բնույթի եզակի աշխատություններից է համաշխարհային չափանիշով: Մ. Ս-ու մյուս ուշագրավ ստեղծագործությունը «Տաղարանն» է («Գիրք քրիստոնէականի վարդապէտութեան» գրքում, 1727), որում ամփոփված ոտանավորները թեպետ առավելապես կրոն. բովանդակություն ունեն, այդուհանդերձ ժամանակի հայ քնարերգության մեջ ուրույն տեղ են գրավում: Դրանց մի մասը որպես շարականներ երգվում են առ այսօր (երաժշտությունը՝ Մ. Ս-ու): Մ. Ս. գրել է նաև կրոնաաստվածաբան., կանոնական, մեկնաբան. բնույթի մի քանի երկեր: Թաղված է Ս. Ղազար կղզում:

Գրկ. Ագոնց Ս., Պատմութիւն կենաց և վարուց տեառն Մխիթարայ Սեբաստացւոյ բաբունապետի և աբբայի, Վնտ., 1810: Թորոսյան Հ., Վարք Մխիթարայ աբբայի Սեբաստացւոյ, Վնտ., 1932: Աղայան Է., Հայ լեզվաբանության պատմություն, հ. 1, Ե., 1958: Ջահուկյան Գ. Բ., Գրաբարի քերականության պատմություն (XVII—XIX դդ.), Ե., 1974:

*Փ. Անթաբյան, Խ. Կարաղեկյան*

**ՄԽԻԹԱՐ ՍՊԱՐԱՊԵՏ**, Մխիթար Բեկ [XVII դ. վերջ, Գանձակ (այժմ՝ Կիրովաբադ)—1727, գ. Խնձորեսկ (այժմ՝ ՀՍՍՀ Գորիսի շրջանում)], Սյունիքի XVIII դ. 20-ական թվականների հայ ազատագրական շարժման ղեկավարներից, *Դավիթ Բեկի* մերձավոր օգնականն ու զորավարը: Մասնակցել է Դավիթ Բեկի կռիվներին, իսկ նրա մահից (կամ հիվանդությունից, 1726) հետո ինքն է գլխավորել Սյունիքի ազատագրական շարժումը: Ըստ պահպանված մի վկայության, 1726-ին ընտրըվել է Ղափանի հայոց իշխան: Նույն թվականին, օսմանյան բանակների դեմ պայքարի նպատակով, զինական օգնության ուղերձ է հղել ռուս. արքունիք: Թուրք. հարձակվող ուժերի դեմ կազմակերպել է Հալիձորի հերոսական պաշտպանությունը և հաղթանակը (տես *Հալիձորի ճակատամարտ 1727*), ապա կարևոր հաղթանակ տարել Մեղրիի մոտ: Մ. Ս-ի հաղթանակների տպավորության տակ Իրանի Սեֆյան շահ Թահմազ II-ը ճանաչել է Սյունիքի հայերի անկախությունը՝ նպատակադրվելով հայ-իրանական միացյալ ճակատ ստեղծել ընդդեմ օսմանյան Թուրքիայի հարձակումների: Ենթադրվում է, որ Մ. Ս-ի նախաձեռնությամբ է Մեղրիում կատարվել թուրք հարկահավաքների սպանությունը և մոտ 32 հզ. հարկաթերթերի այրումը: Սակայն թուրք. մեծաքանակ բանակներն անցել են ընդհանուր հարձակման և ճնշել Մ. Ս-ի ազատագրական ուժերին: Անհաջողություններից սկիզբ են առել տարաձայնություններ, Մ. Ս. ստիպված հեռացել է Հալիձորից և դավադրաբար սպանվել Խնձորեսկում, ուր և թաղված է: Մ. Ս-ին է նվիրված Ս. Խանզադյանի «Մխիթար Սպարապետ» պատմավեպը, Է. Քյոսայանի «Հույսի աստղ» կինոնկարը:

Գրկ. տես *Դավիթ Բեկ* հոդվածի գրականությունը:

*Վ. Դիլոյան*

**ՄԽԻԹԱՐ ՎԱՐԴՊԵՏ** (ծն. և մահ. թթ. անհտ.), հայ ճարտարապետ: Ըստ Մրենի VII դ. գմբեթավոր բազիլիկի կողքի մատուռի մուտքի շուրջը փորագրված արձանագրության, Մ. Վ. այն հիմնովին վերակառուցել է 1277-ին:

Գրկ. Բարխուդարյան Ս., Միջնադարյան հայ ճարտարապետներ և քարգործ վարպետներ, Ե., 1963:

**ՄԽԻԹԱՐԻՔԵՆԴ**, Մխիթարի շեն (Մխիթար Սպարապետի անունով), գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Ասկերանի շրջանում, շրջկենտրոնից 24 *կմ* հարավ: Միավորված է Շուշիքենդի կոլտնտեսության հետ: Ունի տարրական դպրոց, գրադարան: Մ-ում պահպանվել է Ս. Աստվածածին եկեղեցին (XVIII դ.):

**ՄԽԻԹԱՐՅԱՆ** Աբել (1804—1873, Էջմիածին), հայագետ-պատմաբան: Սովորել է Էջմիածնի ժառանգավորաց վարժարանում, ապա դարձել միաբանության անդամ, վարել հոգևոր ու կրթական պաշտոններ: Եղել է Տրապիզոնի հոգևոր առաջնորդը, հիմնել «Թանգարան Հայկազյան» ընկերությունը: Պաշտոնավարել է նաև Կ. Պոլսում: Աշխատակցել է «Կռունկ Հայոց աշխարհին», «Բանասեր», «Արարատ» և այլ պարբերականների: Առանձին գրքերով հրատարակել է «Ճանապարհորդություն յԱնի» (1855), «Պատմություն մենաստանին Հառիճո ի Շիրակ» (1856), «Վեպ զաղթականության հայոց Տրապիզոնու» (1857), «Անուշավան ի գերեվարս» (1860), «Ճանապարհորդություն ի Դավրեժ» (1861), «Վաղարշապատ քաղաքամայր Հայաստանի» (1874) և այլ գործեր:

*Ա. Տեր-Ստեփանյան*

**ՄԽԻԹԱՐՅԱՆ** Ալեքսանդր Նիկոլայի (ծն. 25.5.1912, Մայկոպ), ավիացիայի գեներալ-մայոր (1958): ՍՄԿԿ անդամ 1939-ից: Ավարտել է Ստալինգրադի (Վոլգոգրադ) ռազմաավիացիոն ուսումնարանը (1935), Ռազմաօդային ուժերի զորամասերի հրամանատարների կատարելագործման թռիչքա-տեսական դասընթացները:

1936—41-ին, որպես հրահանգիչ-օդաչու, աշխատել է Ստալինգրադի, Բալաշովի, Կրասնոդարի ռազմաավիացիոն ուսումնարաններում: Հայրենական պատերազմին մասնակցել է 1941-ի հուլիսից: Եղել է գիշերային ռմբակոծիչների էսկադրիլիայի հրամանատար, 1943-ից՝ ավիագնդի հրամանատարի տեղակալ, 1944-ից՝ ավիագնդի հրամանատար: Աչքի է ընկել Կովկասյան ռազմաճակատի օդային մարտերում: 1951-ին նշանակվել է ավիազորամասի հրամանատար: 1960-ից պատասխանատու պաշտոն է վարել ՍՍՀՄ պաշտպանության մինիստրության կենտրոնական ապարատում: Զորացրվելուց (1963) հետո բնակություն է հաստատել Մոսկվայում: Պարգևատրվել է Կարմիր դրոշի շքանշանով: Դիմանկարը՝ հաջորդ էջում:

**ՄԽԻԹԱՐՅԱՆ** Աղեքսանդր Մխիթարի [3.7. 1846, Ալեքսանդրապոլ (այժմ՝ Լենինական)—17.8.1916, Ալեքսանդրապոլ], հայ բանաստեղծ, բանահավաք: Նախնական կրթությունն ստացել է ծննդավայրում, այնուհետև ավարտել է Թիֆլիսի Ներսիսյան դպրոցը: 1867-ից զբաղվել է մանկավարժական գործունեությամբ: Շուրջ կես դար հավաքել և գրի է առել Շիրակի ու Վանանդի հեքիաթներ, առակներ, առածներ, ավանդություններ, երգեր ու պարերգեր («Տաղեր ու խաղեր», 1900, «Փշրանք Շիրակի ամբարներից», տես «Էմինյան ազգագրական ժողովածու», 1901): Թղթակցել է «Արարատ», «Սոխակ Հայաստանի» և այլ պարբերականների, թուրքերենից թարգմանել և առանձին գրքերով հրատարակել է արլ. մի քանի հեքիաթներ («Շիրին և Ֆահրատ», «Լեյլի և Մեջնուն», «Շահ-Իսմայիլ» ևն): Կազմել և խմբագրել է աշուղական երգարաններ: Մ-ի արխիվում պահպանվում են բազմաթիվ անտիպ գործեր՝ պիեսներ, բանաստեղծություններ, բանասիրական նյութեր ևն:

Գրկ. Դուրգարյան Կ. Գ., Աղեքսանդր Մխիթարյան, «ՊԲՀ», 1971, № 3:

*Կ. Դուրգարյան*

**ՄԽԻԹԱՐՅԱՆ** Արտաշես Գաբրիելի (ծն. 4. 11. 1918, Թիֆլիս), հայ սովետական գրականագետ: Բան. գիտ. դ-ր (1970), պրոֆեսոր (1971): 1941-ից՝ Թբիլիսիի Ա. Ս. Պուշկինի անվ. մանկավարժական ինստ-ի դասախոս, 1969—77-ին՝ հայերեն և արևել. լեզուների ու գրականությունների ամբիոնի վարիչ: Մ. ուսումնասիրել է Թբիլիսիի 1920—30-ական թթ. հայ գրական կյանքը, ճշտել Ե. Չարենցի, Դ. Դեմիրճյանի, Ա. Մյասնիկյանի և այլոց ստեղծագործական շատ խնդիրներ ու կենսագրական տվյալներ: Հրատարակել է «Գրականտեսական հարցեր» (1972), «Սովետահայ գրականությունը Վրաստանում» (1978) և այլ մենագրություններ: Մ. անդրադարձել է նաև հայ-վրացական և հայ-ռուսական գրական առնչություններին:

Երկ. Армянская литература в Грузии, Е., 1980.

**ՄԽԻԹԱՐՅԱՆ** Արտաշես Մելքոնի (ծն. 14.8.1912, Դիլիջան), հայ սովետական ինժեներ-մեխանիկ: Տեխ. գիտ. դ-ր (1953), պրոֆեսոր (1953), Ուկր. ՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1980): ՍՄԿԿ անդամ 1944-ից: Ավարտել է Մոսկվայի ինժեներաշինարարական ինստ-ը (1940): 1945-ից գլխավորել է Երևանի գյուղատնտեսական ինստ-ի «Հիդրավլիկա և հիդրոտեխնիկական կառույցներ» ամբիոնը: 1952—1956-ը եղել է Կույբիշևի հիդրոտեխնիկական ինստ-ի նույնանուն ամբիոնի վարիչը, 1956—61-ին՝ Կիևի պոլիտեխնիկական ինստ-ի «Հիդրավլիկա և հիդրոմեքենաներ» ամբիոնի վարիչը: 1961-ից Կիևի քաղաքացիական ավիացիայի ինժեներների ինստ-ի «Թռչող ապարատների թռիչքի աերոմեխանիկա և դինամիկա» ամբիոնի վարիչն է: Հիմնական աշխատանքները նվիրված են հիդրավլիկայի և հիդրոմեխանիկայի հարցերին: Կարևոր ավանդ ունի գազադինամիկական և էլեկտրագազադինամիկական շիթային հոսանքների տեսության զարգացման գործում:

Երկ. Гидравлика и основы газодинамики, К., 1959; Аэродинамика, 2 изд., перераб. и доп., М., 1976; Динамика полета, М., 1978.

**ՄԽԻԹԱՐՅԱՆ** Արտավազդ Մելքոնի (1.12. 1918, Դիլիջան—27.9.1976, Երևան), հայ սովետական մեխանիկ: Ֆիզմաթ գիտ. դ-ր (1965), պրոֆեսոր (1966): ՍՄԿԿ անդամ 1966-ից: Ավարտել է Լենինգրադի ռազմաօդային ինժեներական ակադեմիան (1945): 1957-ից գլխավորել է ՀՍՍՀ ԳԱ ջրաէներգետիկական ինստ-ի (այժմ՝ ջրային պրոբլեմների և հիդրոտեխնիկայի ինստ.) օդերևութաբանության և հիդրոլոգիայի բաժինը: 1975-ից՝ Երևանի պոլիտեխնիկական ինստ-ի բարձրագույն մա-

թեմատիկայի ամբիոնի վարիչ: Մ-ի ղեկավարությամբ կատարվել են Սևանա լճի պրոբլեմի լուծման հիմնարար հետազոտություններ:

*Երկ.* Некоторые вопросы гидродинамики пограничного слоя атмосферы. Водный и тепловой балансы водоемов, Е., 1970.

**ՄԽԻԹԱՐՅԱՆ** Գուրգեն Ենոքի [ծն. 16.4.1919, գ. Թթուջուր (ՀՍՍՀ Կրասնոսելսկի շրջանում)], հայ սովետական փիլիսոփա: Փիլ. գիտ. դ-ր (1972), պրոֆեսոր (1974): ՍՄԿԿ անդամ 1946-ից: Ավարտել է Երևանի համալսարանի պատմության ֆակուլտետը (1946): Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին (1941—45): 1949—1959-ին դասավանդել է ՀԿԿ Կենտկոմին կից եռամյա կուսակցական դպրոցում, 1959-ից դասախոսում է Երևանի համալսարանում, 1979-ից՝ փիլիսոփայության պատմության ամբիոնի վարիչ: Գիտական հետազոտությունները վերաբերում են պատմական մատերիալիզմի, փիլ-յան և սոցիոլոգիայի պատմության հարցերին:

*Երկ.* Ազատություն և անհրաժեշտություն, Ե., 1963: Սոցիոլոգիական ուսմունքների պատմություն, պր. 1—3, Ե., 1971—77: Թ. Պարսոնսի «Գործողության տեսության» հակագիտական էությունը, Ե., 1980: Свобода и историческая необходимость, Е., 1976.

**ՄԽԻԹԱՐՅԱՆ** Միհրան Հովհաննեսի [ծն. 16(29).11.1904, գ. Վարդակ (Արևմտյան Հայաստանի Վանի վիլայեթում)], հայ սովետական ճարտարապետ: ՀՍՍՀ վաստ. շինարար (1966): ՍՄԿԿ անդամ 1925-ից: 1935-ին ավարտել է Լենինգրադի արդ. շինարարության ինժեներների ինստ-ի ճարտ. ֆակուլտետը: Մ-ի նախագծերով կառուցված շենքերից ուշագրավ են Երևանի ժամացույցի գործարանի գլխավոր մասնաշենքը (1948), Կիրովականի պոլիմերային սոսինձների գիտահետազոտական-նախագծային ինստ-ի շենքը (1958), Երևանի կոմպլեքսային էլեկտրասարքավորման համամիութենական գիտահետազոտական և նախագծային ինստ-ի շենքը (1960), կաբելի գործարանի համալիրը (1963), Ալավերդու գարեջրի գործարանը (1953):

*Ա. Կանայան*

**ՄԽԻԹԱՐՅԱՆ** Վահան Գրիգորի [ծն. 16(29).11.1910, Թիֆլիս], հայ սովետական կենսաքիմիկոս: ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ (1968): ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1981): ՍՄԿԿ անդամ 1955-ից: 1932-ին ավարտել է Երևանի բժշկ. ինստ-ը: 1935-ից աշխատել է նույն ինստ-ի կենսաքիմիայի ամբիոնում, 1960-ից՝ վարիչ: Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: Աշխատանքները վերաբերում են օրգանիզմի վրա քլորոպրենի ազդման ինտիմ կենսաքիմիական մեխանիզմների, քլորոպրենային թունավորման կանխարգելման և բուժման հարցերին: Բացահայտել է այրվածքների, հեպատիտների, ինֆարկտի ժամանակ լիպիդային գերօքսիդացման պրոցեսի ինտենսիվացումը հյուսվածքներում, ինչպես նաև վիտամին E-ի զգալի նվազումը: Պարզել է, որ շաքարախտի ժամանակ արյան շաքարի քանակի ավելացմանը զուգահեռ հյուսվածքներում վիտամին E-ի քանակը նվազում է, պերօքսիդներինը՝ ավելանում: Նա ուսումնասիրել է գերօքսիդների, գերօքսիդացած չհագեցած ճարպաթթուների ազդեցությունը որոշ





Ա. Ն. Մխիթարյան Վ. Գ. Մխիթարյան

ֆերմենտների ակտիվության, բջջաթաղանթի թափանցելիության վրա, գերօքսիդների, ռենտգենյան ճառագայթների ազդեցությունը գլխուղեղի գանգլիոզիդների և ցերեբրոզիդների քանակական տեղաշարժի վրա: Մ. ՀՍՍՀ կենսաքիմիկոսների գիտական ընկերության փոխնախագահն է, ՀՍՍՀ առողջապահության մինիստրության գիտա-բժշկական խորհրդի պրոբլեմային հանձնաժողովի նախագահը: Պարգևատրվել է Հայրենական պատերազմի 2-րդ աստիճանի, Կարմիր աստղ և «Պատվո նշան» շքանշաններով, արժանացել է ՀՍՍՀ ԳԱ Նախագահության վաստակագրի (1976):

**«ՄԽԻԹԱՐՅԱՆ ԸՆՏԱՆԻՔ»**, դպրոցական պատկերազարդ ամսագիր: Վենետիկի Մխիթարյան միաբանության հաստատություն: Լույս է տեսել 1947—67-ին (1960—1962-ին՝ «Ընտանիք»), Վենետիկում: Խմբագիրներ՝ Մ. Ջանասյան, Զ. Չանթայան, Վ. Հովհաննիսյան: Լուսաբանել է սփյուռքահայ դպրոցների ու *մխիթարյան վարժարանների* առօրյան, կարևոր տեղ հատկացրել մատաղ սերնդի հայեցի դաստիարակությանը: «Հայրենի լուրեր» խորագրով ընթերցողին է ներկայացրել Սովետական Հայաստանի տնտեսության ու




մշակույթի վերելքը, տպագրել Հայաստան այցելած Մխիթարյանների տպավորությունները, հանրապետության տեսարժան վայրերի լուսանկարներ: Գրական բաժնում զետեղել է մխիթարյան վարժարանների սաների, հայ սովետական բանաստեղծների արձակ ու չափածո գործերը, ժող. զրույցներ ու ավանդություններ: Ուսուցողական նշանակություն ունեն «Գիտական» խորագրով նյութերը՝ աշխարհի ու տիեզերքի, գիտական խոշոր հայտնագործությունների մասին: 1969-ից լույս է տեսնում «Հայ ընտանիք» անունով:

*Տ. Վարդանյան*

**ՄԽԻԹԱՐՅԱՆ ԼԻՑԵՅ**, հիմնադրվել է 1857-ին, Կ. Պոլսի Բանկալթիի թաղամասում, Վիեննայի Մխիթարյան միաբանության նախաձեռնությամբ, որպես նախակրթարան: 1900-ին ուներ երկրորդական (միջնակարգ) դպրոցի մակարդակ՝ ուսման 8 տարվա դասընթացով: 1929-ից լիցեյ է, որին կից գործում են մանկապարտեզ, նախակրթարան և միջնակարգ բաժին: Դասավանդում են բնագիտություն, մարդակազմություն, կենդանաբանություն, բուսաբանություն, հանքաբանություն, երկրաբանություն, տիեզերագիտություն, աստղաբաշխություն, առևտրական գործ, հաշվապահություն, թղթակցություն, արվեստաբանություն, ազգային, ընդհանուր պատմություն, ազգային գրականություն, օտար ազգերի մատենագիտություն, սղագրություն, հայերեն, թուրք., ֆրանս., գերմ., անգլ.: Շրջանավարտներն իրավունք ունեն ուսումը շարունակելու եվրոպական բուհերում կամ զբաղվելու առևտրական գործունեությամբ: 1927-ին կառուցվել է լիցեյի նոր շենք: Նախակրթարանը երկսեռ է, միջնակարգ և լիցեյական բաժինները՝ արական: Մ. լ. հրատարակել է «Շող» կիսամսյա հանդեսը (1910—13) և «Ուսումնարան» (1911—1915) ամսաթերթը: Ունի մոտ 160 սովորող (1981):

*Ա. Իգնատյան*

**ՄԽԻԹԱՐՅԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, Մ խ ի թ ա ր յ ա ն ն ե ր, հայ կրոնական (կաթոլիկ) և մշակութային կազմակերպություններ (Վենետիկի և Վիեննայի): Հիմնադրել է *Մխիթար Սեբաստացին*, 1701-ի սեպտ. 8-ին, Կ. Պոլսում, հոգևոր, ուսումնա-կրթական, գիտական և մշակութային գործունեություն ծավալելու նպատակով:

Սկզբնական շրջանում կոչվել է «Անտոնյան միաբանություն»: 1706-ին տեղափոխվել է Մեթոն (Հունաստան), որը ենթակա էր Վենետիկի Հանրապետությանը, 1717-ից հաստատվել Վենետիկի մոտ գտնվող Ս. Ղազար կղզում: 1712-ին Վատիկանը Մխիթար Սեբաստացուն ճանաչել է միաբանության առաջնորդ, նրան շնորհել աբբահոր կոչում: Մ. մ. գործունեություն է ծավալել երկու՝ կրոնական-կաթոլիկական և հայագիտական-բանասիրական ուղղությամբ: Վատիկանի աջակցությունն ապահովելու նպատակով սկզբնական շրջանում թարգմանվել և հրատարակվել է կաթոլիկական գրականություն. Ալբերտ Մեծի «Համառօտութիւն Աստուածաբանութեան» (1715), Մխիթար Սեբաստացու «Մեկնութիւն սրբոյ աւետարանին Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի որ ըստ Մատթէոսի» (1737), Ալփոնսոս Ռոտրիկվեցի «Կրթութիւն կատարելութեան եւ կրօնաւորականի առաքինութեան» (հ. 1—3, 1741—42) ևն աշխատություններ: Դրան զուգահեռ նախապատրաստվել և հրատարակվել է հայագիտական գրականություն (հայ պատմիչների երկերի քննական բնագրեր, գրաբարի քերականությանը նվիրված ուսումնասիրություններ, դասագրքեր): XVIII դ. 1-ին կեսին Մ. մ-յան հայագիտական գործունեության մեջ հատկապես նշանակալից էր Մխիթար Սեբաստացու «Բառգիրք հայկազեան լեզուի» (հ. 1—2, 1749—69) բացատրական բառարանի հրատարակումը:

XVIII դ. 2-րդ կեսից Մ. մ. վերելք ապրեց, ժամանակի հայ առաջնակարգ մշա-

կության և գիտական գործիչներ Գ. *Ավետիքյանի* (1750—1827), Մ. *Չամչյանի* (1738—1823), Մ. *Ավգերյանի* (1762—1854), Հ. *Ավգերյանի* (1774—1854), Ղ. *Ինճիճյանի* (1758—1833), Մ. *Ջախջախյանի* (1770—1835), Ե. *Թովմաճանի* (1777—1848), Ղ. *Ալիշանի* (1820—1901), Գ. *Զարբհանալյանի* (1827—1901) և ուրիշների գործունեության շնորհիվ: Սկսվեց «Մատենագիրք նախնեաց» և նույնի համառոտ, հանրամատչելի բնույթ կրող «Ընտիր մատենագիրք» շարքերի հրատարակումը: Բնագրագիտական ճշգրտումներով, առաջաբանով ու ծանոթագրություններով հրատարակվեցին Գրիգոր Նարեկացու «Մատենագրութիւնք» (1827), Բարսեղ Կեսարացու «Ճառք...» (1830), Փավստոս Բուզանդի «Պատմութիւն Հայոց» (1832), Մխիթար Հերացու «Ջերմանց մխիթարութիւն» (1832), Դավիթ Անհաղթի «Մատենագրութիւնք» (1833), Եղիշեի «Մատենագրութիւնք» (1838), Մովսես Խորենացու «Մատենագրութիւնք» (1843) և համաշխարհային ու հայ դասականների այլ գործեր: Մխիթարյանները հանդես եկան նաև ինքնուրույն հայագիտական, պատմաբանասիրական, աշխարհագրական, բառաբանագիտական ևն բնույթի աշխատություններով: Այդ տարիներին ստեղծված գործերից հատկապես մեծարժեք են Մ. Չամչյանի «Պատմութիւն Հայոց» (հ. 1—3, 1784—86), Մ. Ավգերյանի «Լիակատար վարք և վկայաբանութիւն սրբոց...» (հ. 1—12, 1810—15), Ղ. Ինճիճյանի «Դարապատում» (հ. 1—8, 1824—28), Ս. *Ագոնցի* և Ղ. Ինճիճյանի «Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի» (հ. 1—11, 1802—08), Ղ. Ալիշանի «Քաղաքական աշխարհագրութիւն» (1853), «Սիսուան» (1885), «Այրարատ» (1890), «Սիսական» (1893), Գ. Ավետիքյանի, Խ. *Սյուրմելյանի*, Մ. Ավգերյանի «Նոր բառգիրք հայկազեան լեզուի» (հ. 1—2, 1836—37), Գ. Զարբհանալյանի «Պատմութիւն հայերէն դպրութեանց» (հ. 1—2, 1865—78) ևն աշխատությունները:

XIX դ. բեղմնավոր էր նաև Մ. մ-յան գրական-գեղարվեստական գործունեությունը, որի հիմքը դրել էր Մխիթար Սեբաստացին իր «Տաղարան» (1727) բանաստեղծությունների ժողովածուով: Այն *կլասիցիզմի* առաջին ամբողջական դրսևորումն էր հայ գրականության մեջ: Հայ կլասիցիզմը հետագա զարգացումն ստացավ Ղ. Ինճիճյանի, Մ. Ջախջախյանի, Է. *Հյուրմյուզյանի*, Գ. Ավետիքյանի ստեղծագործություններում և թարգմանություններում («Տաղք մխիթարյան վարդապետաց», հ. 1—3, 1852—54), իսկ Ա. *Բագրատունու* «Հայկ Դիւցազն»-ով (1858) հասավ գագաթնակետին: Մխիթարյան կլասիցիզմի ներկայացուցիչները գրում էին խրթին, երբեմն արհեստական բառաբարդումներով ու ածանցումներով խճողված գրաբարով, որն անմատչելի էր հասարակ ժողովրդին: XIX դ. 2-րդ կեսից Մխիթարյանների կլասիցիզմը տեղի տվեց գրական նոր ուղղության՝ ռոմանտիզմին, որի հիմնադիրը եղավ Ղ. Ալիշանը՝ «Հայոց աշխարհիկ», «Պլպուլն Ավարայրի», «Հրազդան» ևն չափածո [«Հայրունիք» («Նուագք», հ. 3, 1858)] և «Ցուշիկք



Ս. Ղազարի գրադարանը



Ս. Ղազարի գլխավոր մուտքի սրահը



Ս. Ղազարի պատկերասրահը

հայրենեաց հայոց» (հ. 1—2, 1869—70) պատմագեղարվեստական արձակ ստեղծագործություններով:

Մ. մ. ծավալեց նաև ուսումնակրթական գործունեություն: Փոխարինողներ աճեցնելու նպատակով արդեն 1732-ին Մխիթար Սեբաստացին Ս. Ղազարում հիմնադրեց դպրոց՝ «Վարժարան» անունով: 1833-ին Պադուայում (Հյուսիսային Իտալիա) գործել սկսեցին Մուրատյան, 1836-ին Վենետիկում՝ Ռափայելյան վարժարանները (1873-ին դրանք միավորվեցին՝ ստանալով *Մուրատ-Ռափայելյան վարժարան* անունը): 1846-ին Փարիզում բացվեց ևս մեկ դպրոց, որը հետագայում ստացավ «Փարիզի Մուրատյան վարժարան» անունը: Այդ վարժարանները գործում են առ այսօր (տես *Մխիթարյան վարժարաններ*):

Վենետիկի Մխիթարյանները 1843-ին հիմնադրեցին «*Բազմավէպ*» ամսագիրը, որը XIX դ. 60-ական թթ. ընդունեց հայագիտական-բանասիրական բնույթ և այն պահպանում է առ այսօր:

1772-ին, Ս. Մելքոնյանի (1717—1799) աբբահայրության ժամանակ, երբ Մ. մ-յան անդամների միջև անհամաձայնություն և վեճ էր ծագել կանոնադրության փոփոխման կապակցությամբ, միաբանների մի խումբ՝ Ա. *Բաբիկյանի* (1738—1825) գլխավորությամբ, թողնելով Վենետիկը, 1773-ին հաստատվեց Տրիեստում, 1811-ից՝ Վիեննայում: 1811-ի հունիսի 8-ին ավստրիական կառավարությունը պաշտոնապես ճանաչեց նրանց գոյությունը: Մ. մ-յան Վիեննայի ճյուղավորումը (*Մխիթարյաններ Վիեննայի*) կարճ ժամանակում կրկնապատկեց իր անդամների թիվը, ընդլայնեց դպրոցական ցանցը (ուս. հաստատություններ բացվեցին Կ. Պոլսում, Իզմիրում, Տրիեստում և այլուր): Վիեննայի Մխիթարյանները նույնպես իրենց մշակութային գործունեությունը սկսեցին կրոնաաստվածաբանական բնույթի գործերի [«Պատարագամատույց» (1803), Կ. Բիլուարտի «Բովանդակութիւն բովանդակութեան ս. Թովմայի...» (հ. 1—3, 1810—1813)] ևն հրատարակումով: Հենց սկզբից նրանց գործունեության մեջ գերակշռեցին հայագիտական-բանասիրական, լեզվաբանական-թարգմանական աշխատությունները: Հիշատակության արժանի են Պ. *Հովնանյանի* «Մարդկային լեզուին սկզբան» (1857), Հ. *Գաթըրճյանի* «Տիեզերական պատմութիւն ի սկզբանէ աշխարհի մինչեւ ցմեր ժամանակս» (հ. 1—2, 1849—52), Ղ. *Հովնանյանի* «Պատմութիւն քաղաքականութեան եվրոպական տէրութեանց ընդհանրապէս» (հ. 1—4, 1856—60), Ա. *Այտընյանի* «Քննական քերականութիւն աշխարհաբար կամ արդի հայերէն լեզուի» (1866), Ս. *Տէրվիշյանի* «Հնդեվրոպական նախալեզու» (1885), Հ. Քոսյանի «Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս» (հ. 1—2, 1899) ևն աշխատությունները: Ստեղծվեցին նաև գեղարվեստական երկեր. Ս. Տերվիշյանի «Այրի մայրը և միամոր որդյակը» (1871), Կ. Սիպիլյանի «Տրդատա առանձնանալը, վերջին օրերն ու մեռնիլը» (1851), Ս. Գաթըրճյանի «Տարվույն չորս եղանակները կամ Նկարագիր սքանչելեաց բնութեան» (1852) ևն: Կատարվեցին գեղարվեստական թարգմանություններ. Ժ. Լաֆոնտենի «Առակք» (1894), Ժ. Ռասինի «Երգ վասն կրոնից» (1842) ևն:

Վիեննայի Մխիթարյանները 1847—63-ին հրատարակել են «*Եվրոպա*» շաբաթաթերթը, 1887-ից՝ «*Հանդէս ամսօրյա*» ամսագիրը:

Մ. մ-յան XIX դ. վերջի և XX դ. 1-ին կեսի գործունեությունում նշանակալից դեր են խաղացել Գ. *Գալեմքյարյանը* (1862—1917), Հ. *Տաշյանը* (1866—1933),

Ս. *Էփրիկյանը* (1873—1952), Ա. *Ղազիկյանը* (1870—1841), Վ. *Հացունին* (1870—1944), Մ. *Պոտուրյանը* (1881—1959), Ն. *Ակինյանը* (1883—1963), Վ. *Հովհաննիսյանը* (1894—1977) և ուրիշներ: Ներկայումս Մ. մ-յան մշակութային գործունեությունը համեմատաբար փոքր բաժին ունի հայագիտության և մանավանդ հայ գեղարվեստական գրականության համընդհանուր զարգացման գործում: Վենետիկի Մխիթարյանների վերջին շրջանի գործերից հիշատակելի են Պ. *Անանյանի* «Սեբեոսի պատմության գրքի մասին քանի մը լուսաբանություններ» (1973), Մ. *Ճանաշյանի* «Հ. Արսեն Ղազիկյան և իր թարգմանությունները» (1974), «Պետրոս Դուրյան՝ դար մը ետք» (1974), Լ. Զեքիյանի «Հայ թատրոնի սկզբնաքայլերը և հայ վերածնունդի շարժումը» (1975), Տ. Ցարտըմյանի «Քեսունի Կարմիր վանքը» (1975) են աշխատությունները: Վիեննայի Մխիթարյանները շարունակում են «Ազգային մատենադարան» արժեքավոր մատենաշարի հրատարակումը: Ուշադրության արժանի հայագիտական հոդվածներ են հրատարակվում «Բազմավեպ»-ում և «Հանդես ամսօրյա»-ում:

*Գրկ.* Մխիթարյան Հոբելյան 1701—1901, Վնտ., 1901: Սարգիսյան Բ., Երկհարյուրամյա գրականական գործունեություն և նշանավոր գործիչներ Վենետկո Մխիթարյան միաբանության, Վնտ., 1905: Ղազիկյան Ա., Հայկական նոր մատենագիտություն, Վնտ., 1909—1912, էջ 2023—2035: Ակինյան Ն., Ակնարկ մը Վիեննական Մխիթարյան միաբանության գրական գործունեության վրա, Վնն., 1912: Ընդհանուր գրացուցակ Մխիթարյան գրավաճառանոցի, Վնն., 1972: Գրացուցակ Մխիթարյան տպարանին. 1700—1978, Վնտ., 1978: *Ս. Շտիկյան*

**ՄԽԻԹԱՐՅԱՆ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐ**, *Մխիթարյան միաբանության* հիմնած հայկական դպրոցներ: Մինչև Մխիթարյան միաբանության ստեղծումը (1701) նրա հիմնադիր *Մխիթար Սեբաստացին* դպրոցներ է բացել Կարինի Կարմիր վանքում (1698), Կ. Պոլսի Ղալաթիա թաղամասում (1700): 1717-ին Ս. Ղազար տեղափոխված միաբանությունը վանքին կից հիմնել է ճեմարան (ակադեմիա), որը հետագայում դարձել է ճանաչված ուսումնագիտական կենտրոն: Այստեղ հայերենին, արլ. լեզուներին և մշակույթին ծանոթացել են Եվրոպայի բազմաթիվ մտավորականներ (Բայրոն, Բրեյնդ, Ստենդալ, Դիարիխ, Պետերման և ուրիշներ): XIX դ. Մխիթարյան միաբանությունը Կ. Պոլսում ուներ 6 նախակրթարան: Իրենց երկարատև գործունեությամբ առանձնանում են Մազզ Ադաձի (1847), Քաղկեդոնի (1870) նախակրթարանները: Վիեննայի Մխիթարյանները Կ. Պոլսի ֆրանցիսկյան վանքին կից հիմնել են դպրոց (1830), որը 1857-ին տեղափոխվել է Բանկալթիի թաղամասը: Դպրոցներ են հիմնել Հունգարիայի հայ գաղթավայրերում՝ Վարատինում (1749), Սիբվիզում (1797), Եղիսաբեթուպոլսում (1746, ծրագիրն ու կանոնադրությունը 1790-ին կազմել է Մ. Չամչյանը), նաև Պարտիզակում (1883), Նիկոմիդիայում (1887), Սավրոյայում (1885), Ղարասու Բազարում (1825), Տրապիզոնում (1817), Սիմֆերոպոլում (1862), Ախալցխայում (1831), Մուշում (1892), Մերդինում (1911), Խարբերդում (1912), Քավթառլու գյուղում (1880, այժմ՝ Փանիկ, Արթիկի շրջան): Դպրոցական գործի ղեկավարման մեջ միասնականություն հաստատելու նպատակով միաբանությունը կազմել է (1843) Խնամակալից ժողով՝ Ս. Թեոդորյանի և Ռ. Թըրյանի գլխավորությամբ: Մինչև առաջին համաշխարհային պատերազմը Վիեննայի Մխիթարյաններն ունեցել են 26 դպրոց: 1918-ին Կ. Պոլսի Շիշլի թաղամասում հիմնըվել է որբանոց-դպրոց, որը 1921-ին տեղափոխվել է Գատը գյուղը, 1922-ին՝ Իտալիայի Ֆիեսո գյուղը, ապա՝ Միլան: 1936-ին նոր դպրոցներ են հիմնվել Ալեքսանդրիայում, Հալեպում (վերջինս՝ լիցեյի ծրագրով):

Վենետիկի Մխիթարյանների տնօրինության տակ այժմ գործում են *Սամվել-Մուրադյան վարժարանը* (Ֆրանսիա), *Մուրատ-Ռափայելյան վարժարանը* (Իտալիա), Բուենոս Այրեսի և Հալեպի Մխիթարյան վարժարանները: Միաբանությունն ունի նաև երկու ընծայարան՝ Բեյրութում և Ս. Ղազարում: Առանձին ընծայարաններ ունեն նաև Վիեննայի միաբանները, որոնց հովանավորությամբ Կ. Պոլսում գործում է Բանկալթիի լիցեյը: *Ա. Իգնատյան*

**ՄԽԻԹԱՐՅԱՆՆԵՐ ՎԵՆԵՏԻԿԻ**, տես *Մխիթարյան միաբանություն*:

**ՄԽԻԹԱՐՅԱՆՆԵՐ ՎԻԵՆՆԱՅԻ**, *Մխիթարյան միաբանության* ճյուղավորումը՝ հաստատված նախ Տրիեստում (1773—1810), ապա՝ Վիեննայում (1811-ից): Չնայած առանձնանալուն, մշակութային և կրոնական գործունեությամբ մնացել են Մխիթարյան միաբանության անբաժան մասը: 1900-ից սերտորեն համագործակցում են Վենետիկի Մխիթարյանների հետ:

**ՄԽՈՑ**, մեքենայի կամ սարքի շարժական դետալ, որը կից փակում է գլանի լայնական հատվածքը և շարժվում նրա առանցքին զուգահեռ: Մխոցավոր մեքենաներում և մեխանիզմներում Մ. ծառայում է մեխանիկական էներգիան հեղուկի (գազի) ճնշման էներգիայի կամ հակառակը փոխակերպելու համար: Երկտակտ ներքին այրման շարժիչներում կատարում է նաև գազաբաշխման ֆունկցիաներ: Կառուցվածքից, երկարության և տրամագծի հարաբերությունից կախված Մ-ները լինում են՝ փողավոր, սկավառակավոր, սուզված:

**ՄԽՈՑԱՅԻՆ ՄԵՔԵՆԱ**, մեքենա, որում աշխատող մարմնի (գազ, գոլորշի, ջուր) էներգիայի փոխակերպումը կատարվում է գլանում տեղափոխվող *մխոցի* օգնությամբ: Մ. մ-ի գլանում մխոցի ետադարձ-համընթաց շարժման դեպքում աշխատող մարմնի ծավալը, մյուս պարամետրերի (ճնշում, ջերմաստիճան ևն) հետ, պարբերաբար փոփոխվում է, որի հետևանքով աշխատող մարմնի էներգիան կամ նվազում է (Մ. մ.—շարժիչ), կամ աճում (Մ. մ.—կոմպրեսոր, պոմպ): Մ. մ-ներ են ներքին այրման շարժիչների մեծ մասը, շոգեմեքենաները, մխոցային կոմպրեսորները և պոմպերը:

**ՄԽՉՅԱՆ** Լիպարիտ Հովհաննեսի [1894, Կարս —1921, գ. Իմանշալու (այժմ՝ ՀՍՍՀ Արտաշատի շրջան, գ. Մխչյան)], Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար մղված պայքարի մասնակից:



Լ. Հ. Մխչյան

Կոմունիստական կուսակցության անդամ 1917-ից: Ավարտել է Վլադիմիրյան զինվորական ուսումնարանը և Օմսկի զնդացրային դպրոցը: Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ եղել է Արևմտյան, 1917-ից՝ Կովկասյան ռազմաճակատում: Ծառայել է Ալեքսանդրապոլում (Լենինական) և Սարիղամիշում: Հեղափոխական գործունեություն է ծավալել զինվորների շրջանում: 1920-ի Մայիսյան ապստամբության օրերին ընտրվել է Սարիղամիշի ռազմահեղափոխական կոմիտեի կազմում, եղել կարմիր զորքերի կայազորի պետ: Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո նշանակվել է հայկական կարմիր բանակի առաջին առանձին հրաձգային բրիգադի կոմիսար: Դաշնակների 1921-ի փետրվարյան խռովության ժամանակ եղել է Ղամարլուի (Արտաշատ) ռազմաճակատի հրամանատարը և զոհվել մարտում: Թաղված է Երևանի 26 կոմիսարների անվ. զբոսայգում: ՀՍՍՀ Արտաշատի շրջանի Իմանշալու գյուղը 1935-ից կոչվում է Մ-ի անունով: Նրան է նվիրված Ե. Չարենցի «Իմ ընկեր Լիպոն» բանաստեղծությունը:

*Գրկ.* Կարապետյան Լ. Գ., Լիպարիտ Մխչյան, Ե., 1965: *Մ. Հովհաննիսյան*

**ՄԽՉՅԱՆ**, գյուղ Հայկական ՍՍՀ Արտաշատի շրջանում, շրջկենտրոնից 10 *կմ* հյուսիս-արևմուտք: Մ-ով է անցնում Երևան—Արտաշատ խճուղին: Կոլտնտեսությունն զբաղվում է խաղողագործությամբ, պտղաբուծությամբ, բանջարաբոստանային կուլտուրաների մշակությամբ, անասնապահությամբ: Ունի 2 միջնակարգ դպրոց (մեկը՝ երեկոյան), կուլտուրայի տուն, գրադարան, կապի բաժանմունք, կինո, հեռախոսակայան, մսուր-մանկապարտեզ, դեղատուն, ամբուլատորիա: Մ-ի տարածքում են միջշրջանային անասնաբուծական տոհմակայանը, Բուրաստանի կոնյակի գործարանի կետը, «Գլխհայջրշին» գլխավոր վարչության № 3 ավտոբազան, Հայկական ՍՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության № 1 շարժական մեքենայացված շարասյունը և կենտրոնական բազան, Հայկական ՍՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության

Մխչյան



մինիստրության հիդրոմելիորատիվ վերանորոգման գործարանը, «Գյուղշին» № 5 տրեստի № 16 շարժական մեքենայացված շարասյունը են: 1921-ի քաղաքացիական կռիվների ժամանակ գյուղի մոտ տեղի են ունեցել մարտեր, որոնց ակտիվորեն մասնակցած Լ. *Մխչյանի* անունով էլ կոչվում է գյուղը: 1958—62-ին Մ-ում լույս է տեսել «Խաղողագործ» թերթը: Բնակիչների նախնիները եկել են Խոյից, Սալմաստից, 1828-ին:

**ՄԽՉՅԱՆԻ ՋՐՀԱՆ ԿԱՅԱՆ,** կառուցվել է 1968-ին, Սևջրի աղբյուրների և Արարատյան դաշտի ստորերկրյա ջրերը Արտաշատի ջրանցք տեղափոխելու համար: Ունի երկու աստիճան. ապահովում է ջրամբարձը 135 *մ*-ի վրա, ճնշման խողովակաշարի երկարությունը 9,1 *կմ* է: Ջրի ելքը առաջին աստիճանում 16,6 $մ^3$/*վրկ* է, երկրորդում՝ 9,4 $մ^3$/*վրկ*: Հզորությունը՝ 24 հզ. *կվտ*: Ջուրը Սևջուր գետի ավազանից Հրազդան գետ և ջրհան կայան փոխադրվում է ջրանցքներով: Գետերի վրա կառուցված է երկու պատվար: Մխչյանի և Արևշատի (1967) ջրհան կայանների կառուցմամբ (վերջինս Սևջրի աղբյուրների ջրերը բարձրացնում է Ստորին Հրազդանի ջրանցք) հնարավոր դարձավ ոռոգման նպատակով օգտագործվող Սևանա լճի ջրի տարեկան ծախսը կրճատել մոտ 200 մլն $մ^3$-ով:

*Գ. Աղախանյան*

**ՄԽՋԻՆ,** գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Մանազկերտի գավառում: 1909-ին ուներ 15 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է աքսորի ճանապարհին:

**ՄԽՈՒՄ,** նյութերի ջերմամշակման տեսակ (տաքացում, ապա արագ հովացում), որի նպատակը նյութի բարձրջերմաստիճանային վիճակի հաստատումն է կամ նրա դանդաղ հովացման ժամանակ ընթացող անցանկալի պրոցեսների կանխումը: Մ-ման կարելի է ենթարկել միայն այնպիսի նյութեր, որոնց հավասարակշիռ վիճակը բարձր ջերմաստիճանում տարբերվում է հավասարակշիռ վիճակից ցածր ջերմաստիճանում (օրինակ, բյուրեղային կառուցվածքով): Մ-ից հետո նյութը գտնվում է, այսպես կոչված, անհավասարակշիռ կառուցվածքային վիճակում, որը հատուկ չէ տվյալ նյութին նորմալ ջերմաստիճանում (20°C): Մ-ման հետևանքով առաջացող կառուցվածքները լոկ հարաբերականորեն են կայուն (տաքացնելիս անցնում են ավելի կայուն վիճակի):

Մ-ման ենթարկվող նյութերի առավել խոշոր խումբ են կազմում պողպատները: Կատարվում է նաև հնացող, կարգավորվող ու միաֆազ համաձուլվածքների և մաքուր մետաղների Մ.: Հեղուկի Մ-ման միջոցով կարելի է կասեցնել նրա բյուրեղացումը: Այս դեպքում Մ-ման արդյունքը հեղուկի անցումն է ապակենման վիճակի: Որոշ համակարգերի համար Մ. հնարավոր է հեղուկ վիճակից: Այդպիսի Մ-ման շնորհիվ կարելի է վերացնել *լիքվացիան*:

**ՄԾԲԻՆ** (Νίσιβις), քաղաք Վերին կամ Հայոց Միջագետքում, այժմյան Նիսիբին քաղաքի մոտ, Խաբուր գետի Ջախջախ վտակի ափին: Հնագույն ժամանակներում Մ. Միգդոնիա փոքրիկ պետության մայրաքաղաքն էր, իսկ Տիգրան Բ-ի օրոք (մ. թ. ա. 95—55) մտնում էր հայկ. պետության մեջ և վերջինիս Արվաստան երկրի գլխավոր կենտրոնն էր: Մ. Տիգրան Բ-ի աթոռանիստերից էր, որտեղ պահվում էր նրա գանձերի մի մասը: Մ-ի անմիջական տնօրինողը, զերագույն կառավարիչն ու բազմամարդ կայազորի հրամանատարը Տիգրանի եղբայրն էր՝ Գոռը, որը մ. թ. ա. 68-ին երկար ժամանակ դիմադրեց հռոմ. զորավար Լուկուլլոսի հարձակումներին: Ի վերջո հռոմեացիներին հաջողվեց գրավել քաղաքը և կողոպտել նրա հարստությունները: Հուլիանոս կայսեր մահից (363) հետո Մ. անցել էր պարսիկներին: VII դ. Մ. գրավում են արաբները, որից հետո նրա բնակչության կազմն աստիճանաբար ենթարկվում է փոփոխության. այնտեղ պարսիկների ու հայերի հետ միասին բնակություն են հաստատում արաբներ ու քրդեր, իսկ թուրք. նվաճումներից հետո (XIV դ.)՝ թուրքեր: Հին և միջին դարերում Մ-ի բնակչության թվի մասին տվյալներ չկան (ենթադրվում է մինչև 100 հզ. մարդ): Մ. եղել է վաճառաշահ քաղաք, որը շրջափակված էր պաշտպանական պարիսպներով և ուներ ամուր բերդ: Այն եղել է քրիստոնեության տարածման նշանավոր կենտրոն: Մ-ի ավերակների մոտ մինչև օրս էլ գոյություն ունի Նիսիբին կամ Նեսիբին փոքրիկ քաղաքը, որը Դիարբեքիրի վիլայեթի համանուն սանջակի կենտրոնն է և XX դ. սկզբին ուներ մոտ 7 հզ. բնակիչ, որից շուրջ 1000-ը՝ հայեր: Վերջիններս, որ ունեին իրենց արհեստանոցները, խանութները, եկեղեցիները և դպրոցը, 1915-ին ենթարկվեցին թուրք. բռնություններին. մի մասը ոչնչացավ, մյուս մասը տարագրվեց զանազան երկրներ: Այժմ պատմական Մ-ից պահպանված են պարսպապատերի մնացորդները, մի քանի եկեղեցիների (որոնց թվում և կիսով չափ հողի մեջ թաղված գեղատեսիլ Ս. Հակոբի եկեղեցու) ավերակները, ինչպես և զանազան շենքերի փլատակներ:

*Գրկ.* Ի ն ճ ի ճ յ ա ն Ղ., Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի, մաս 1, հ. 1, Վնտ., 1806: Ե ր ե մ յ ա ն Ա. Մ., Արևմտահայ աշխարհի, Նյու Յորք, 1947:

*Թ. Հակոբյան*

**ՄԾՂՆԵՈՒԹՅՈՒՆ,** աղանդավորական շարժում Հայաստանում, V դարում: Անունը հավանաբար առաջացել է Ասորիքում տարածված «մսալյանա» (աղոթողներ) աղանդից: Մ. դատապարտվել է Շահապիվանի եկեղեցական ժողովում (443): Ժողովի կանոններից երևում է, որ Մ-յանը հարել են ոչ միայն ժող. խավերը, այլև հոգևորականներ ու իշխանավորներ: Մ-յան մեջ մեղադրվողների նկատմամբ գործադրված դաժան պատիժներն ու խոշտանգումները ցույց են տալիս, որ շարժումն ունեցել է հակաեկեղեցական և հակաֆեոդալական բնույթ: Հետագայում մծղնեները ձուլվել կամ հարել են պավլիկյաններին (տես *Պավլիկյան շարժում*):

*Գրկ.* Տ ե ր-Մ ի ն ա ս յ ա ն Ե. Գ., Միջնադարյան աղանդների ծագման և զարգացման պատմությունից, Ե., 1968:

*Ս. Մելիք-Բախշյան*

**ՄԾՈՒՐՆ,** Մ ծ ու ր ք, քաղաք *Մեծ Հայքի* Տուրուբերան նահանգի Տարոն գավառում, Արածանիի և Մեղրագետի միախառնման մոտ: Հիմնադրել է Սանատրուկ թագավորը (78—110) և դարձրել իր գահանիստ քաղաքներից մեկը: Գտնվելով Տիգրանակերտ—Արտաշատ առևտրական և ռազմ. մայրուղու վրա՝ կարճ ժամանակում բարգավաճել և զարգացել է: Հավանաբար ավերվել է IV դ. 2-րդ կեսին՝ Սասանյան Շապուհ II թագավորի արշավանքների հետևանքով:

**ՄԿԱՆԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ,** տես *Անատոմիա*:

**ՄԿԱՆԱԲՈՐԲ,** մ ի ո զ ի տ, կմախքային մկանների բորբոքային հիվանդություն: Սովորաբար ընդգրկում է ամբողջ մկանային համակարգը և ընթանում որպես բ ա զ մ ա մ կ ա ն ա բ ո ր բ: Մ. կարող է նկատվել տարբեր հիվանդությունների ժամանակ, սակայն առավել հաճախ շարակցական հյուսվածքի սիստեմային հիվանդությունների (տես *Կոլագենային հիվանդություն*) դրսևորման ձև է: Երբեմն զուգակցվում է մաշկային ախտահարումների հետ, և զարգանում է դերմատոմիոզիտ (մ ա շ կ ա մ կ ա ն ա բ ո ր բ): Հիվանդության յուրահատուկ ձև է մակաբուծական Մ., որը լինում է տրիխինելոզի, էխինոկոկոզի և ցիստիցերկոզի դեպքում: Գոյություն ունի նաև ոսկրացնող Մ., որի դեպքում մկանային հյուսվածքը փոխարկվում է ոսկրայինի: Ախտանշանները. մկանացավեր, մկանաթուլություն, շարժողության խանգարումներ, հետագայում՝ մկանների կարծրացում, մկանների կծկանք (կոնտրակտուրա): Բուժումը. հորմոնային պատրաստուկներ, վիտամիններ, ցավը հանգստացնող միջոցներ, հակամակաբուծական բուժում:

**ՄԿԱՆԱԹՈՒԼՈՒԹՅՈՒՆ,** մ ի ա ս թ ե ն ի ա, Է ր բ-Հ ո լ դ ֆ լ ա մ ի հ ի վ ա ն դ ու թ յ ու ն, քրոնիկական առաջադիմող հիվանդություն. բնորոշվում է միջաձիգզոլավոր *մկանների* թուլությամբ և ախտաբանական գերհոգնածությամբ, որոնք ի հայտ են գալիս սովորական ֆիզիկական աշխատանքից հետո: Հիվանդության սկզբում առավել խոր ախտահարվում են գլխուղեղային՝ հատկապես կոճղեզային (բուլբար) նյարդերով նյարդավորվող մկանները, հետագայում նաև պարանոցի, իրանի և ծայրանդամների մկանները: Պատճառներն են. ուրցագեղձի ֆունկցիայի (հիպերտրոֆիա, ուռուցքներ), իմուն պրոցեսների, նյարդամկանային սինապսի շրջանում խոլինէսթերազի և ացետիլխոլինի փոխհարաբերության խանգարումները: Հիվանդությունը զարգանում է 20—40 տարեկանում, հիմնականում կանանց մոտ: Ախտանշաններն են. վերին կոպերի իջեցումը (պտոզ) և աչքի մկանների թուլությունը, որի հետևանքով առաջանում են շլություն, երկտեսություն: Դժվարանում է ծամելը, կլլումը, խոսելը, երբեմն խանգարվում է բնականոն շնչառությունը: Շատ արագ առաջանում է ծայրանդամների հոգնածություն, շարժումների սահմանափակում: Ծանր դեպքերում (կլլման խանգարման պատճառով) հիվանդները հյուծվում են: Կարող է զարգանալ տարածված Մ., կոճղեզային լուծանք (բուլբար պարալիզ), շնչառության

խանգարում և մահ: Բուժումը. հակախոլինէսթերազային պատրաստուկներ (պրոզերին, օքսազիլ, մեստինոն): Սակայն անհրաժեշտ է հաշվի առնել, որ վերոհիշյալ պատրաստուկների մեծ դոզաների երկարատև օգտագործումը կարող է հանգեցնել կյանքին վտանգ սպառնացող միասթենիկ կրիզի: Նման դեպքերում անհապաղ դադարեցվում է այդ պատրաստուկների ընդունումը և նշանակվում ատրոպին, ուրցագեղձի հեռացում կամ ռենտգենյան ճառագայթում:

**ՄԿԱՆԱՅԻՆ ԿԾԿՈՒՄ**, մկանի կարճացում, որի հետևանքով այն մեխանիկական աշխատանք է կատարում. ֆիզիոլոգիական, կենսաքիմիական և կենսաֆիզիկական բարդ պրոցես: ժամանակակից տեսության համաձայն (Զ. Հանսոն և Հ. Հաքսլի, 1955, 1960) Մ. կ-ման ժամանակ մկանաթելերում պարունակվող ակտին և *միոզին* սպիտակուցների թելիկները չեն կարճանում, այլ սահում են միմյանց վրայով, ակտինի թելիկները ներխրվում են միոզինի թելիկների մեջ, առաջանում է ակտոմիոզին, որի հետևանքով մկանաթելերի երկարությունը կրճատվում է: Պրոցեսը կատարվում է ադենոզինեռֆոսֆորական թթվի (ԱԵՖ) ճեղքման էներգիայի հաշվին, կալցիումի իոնների ներկայությամբ: Տարբերում են իզոմետրիկ, իզոտոնիկ և աուքսոտոնիկ Մ. կ-ներ: Իզոմետրիկ Մ. կ-ման դեպքում աճում է մկանի լարվածությունը, բայց երկարությունը չի փոխվում, իզոտոնիկ կծկման ժամանակ մկանը կարճանում է, լարվածությունը մնում է անփոփոխ: Օրգանիզմում կմախքային մկանները կատարում են միայն աուքսոտոնիկ կծկումներ, որի դեպքում փոխվում է մկանի և՛ լարվածությունը, և՛ երկարությունը: Կմախքային մկանի մեկ կծկումը տևում է վայրկյանի տասնորդական մասեր, սակայն սովորաբար մկանները ստանում են նյարդային ազդակների համազարկեր և կատարում պրկանքային (տետանիկ) կծկումներ, որոնք բազմաթիվ միայնակ կծկումների միաձուլման արդյունք են: Օրգանիզմում տեղի ունեցող բոլոր շարժումները (բացառությամբ էպիթելի թարթիչների շարժումներից) պայմանավորված են Մ. կ-ով:

*Գրկ.* Иванов И. И., Юрьев В. А., Биохимия и патобиохимия мышц, Л., 1961; Хаксли Г., Механизм мышечного сокращения, в сб.: Молекулы и клетки, пер. с англ., в. 2, М., 1967. *Վ. Գրիգորյան*

**ՄԿԱՆՆԵՐ** (musculus), մարդու և կենդանիների կմախքի ու ներքին օրգանների մկանունքը, որն ապահովում է մարմնի և դրա առանձին մասերի շարժումները տարածության մեջ, արյան շրջանառությունը, շնչառությունը, սննդի տեղափոխությունը մարսողության օրգաններով, անոթների տոնուսի պահպանումը, արտաթորանքների հեռացումն օրգանիզմից ևն: Մ-ի կծկվելու ունակությունը (տես *Մկանային կծկում*) կենդանի կառուցվածքների հատուկ ընդհանուր օրինաչափության՝ մեխանաքիմիական ակտիվության մասնավոր դեպքն է: Կա Մ-ի երկու հիմնական տեսակ՝ միջաձիգ զոլավոր և հարթ: Միջաձիգ զոլավոր Մ. են ողնաշարավոր կենդանիների և մարդու կմախքային մկանունքը (սովորաբար միս է կոչվում), որոնք ապահովում են կամային շարժումները, ինչպես նաև հոդվածոտանիների և այլ անողնաշարավորների Մ.: Առանձնահատուկ է սրտամկանը (միոկարդ), որը ևս միջաձիգ զոլավոր մկանային հյուսվածքից է կազմված, սակայն տարբերվում է կառուցվածքով և կատարում է ինքնաբեր կծկումներ: Հարթ Մ. գտնվում են մարդու և ողնաշարավոր կենդանիների խոռոչավոր ներքին օրգանների և արյան անոթների պատերի հաստության մեջ և կծկվում են ակամա: Հարթ Մ-ին են պատկանում նաև անողնաշարավոր կենդանիների Մ-ի մեծ մասը: Մ-ի կառուցվածքային տարրերը մկանաթելերն են, որոնք արտաքինից պատված են թափանցիկ թաղանթով՝ սարկոլեմայով, պարունակում են սարկոպլազմա, կծկվող մկանաթելիկներ, սարկոմարմնիկներ, միտոքոնդրիաներ ևն: Միջաձիգ զոլավոր Մ-ի մկանաթելիկները բազմակորիզ խոշոր բջիջներ են, որոնց տրամագիծը 10—100 *մկմ* է, երկարությունը համապատասխանում է մկանի երկարությանը և մարդու մոտ կարող է հասնել մինչև 12 *սմ*-ի: Միջաձիգ զոլավոր Մ. հարուստ են շարժիչ և զգացող նյարդերով ու սիմպաթիկ նյարդային համակարգի հարմարվողական-սնուցողական թելիկներով, ինչպես նաև (հատկապես երկկենցաղների և սողունների մոտ) մկանային տոնուսը պահպանող հատուկ տոնիկ թելիկներով: Այդ Մ. օժտված են նաև դրդելիությամբ, դրդումը մկանաթելի երկու ուղղություններով տարածելու և կծկվելու հատկությամբ: Դրանց դերը չափազանց մեծ է ջերմագոյացման պրոցեսներում և հետևաբար՝ օրգանիզմի ջերմային հաշվեկշռի պահպանման գործում: Հարթ Մ-ի թելիկները միակորիզ, իլիկանման բջիջներ են, երկարությունը 50—250 *մկմ* է, լայնությունը՝ 4—6 *մկմ*: Հարթ Մ-ում գրգիռը դանդաղ է տարածվում, կծկումներն առաջանում են ավելի ուժեղ և տևական գրգռումներով: Դրանք կարող են նյութերի ու էներգիայի քիչ ծախսումով երկար ժամանակ գտնվել տոնիկ լարման մեջ: Հարթ Մ-ին հատուկ են նաև ինքնաբեր (ավտոմատ) կծկումներ, որոնք կատարվում են առանց կենտրոնական նյարդային համակարգի դրդող ազդանշանների: Հարթ Մ-ի կծկման ֆունկցիայի առանձնահատկությունները պայմանավորված են ոչ միայն նյարդավորման և հյուսվածաբանական կառուցվածքով, այլև քիմ. կազմի յուրահատկությամբ՝ ակտոմիոզինի, մակրոէրգիկ ևն միացությունների ցածր պարունակությամբ: Հարթ Մ. օժտված են նաև իրենց չափերը փոխելու ունակությամբ՝ առանց լարվածությունը մեծացնելու (օրինակ, խոռոչավոր օրգանները՝ ստամոքս, միզափամփուշտ ևն): Մկանաթելերը կմախքային Մ-ում առաջացնում են փունջ շարակցական հյուսվածքով իրար միացած առանձին մկանախրձեր, որոնք համախմբվելով առաջացնում են մկանի փորիկը՝ կծկվող հատվածը: Մ. ոսկրերին կպչում են ջլերով, որոնք կազմված են կոլագենային թելերից և օժտված են ձգման հանդեպ մեծ դիմադրությամբ: Մարդու և ողնաշարավոր կենդանիների միջաձիգ զոլավոր Մ-ի հում զանգվածի քիմ. բաղադրությունն է. 72—78% ջուր, 22—28% պինդ նյութեր, այդ թվում սպիտակուցներ (միոզին, ակտին ևն), գլիկոգեն, ֆոսֆատիդներ, խոլեսթերին, ադենոզինեռֆոսֆորաթթու, չեզոք ճարպեր, հանքային նյութեր՝ K-ի, Na-ի, Ca-ի, Mg-ի աղեր ևն: Մ-ի գույնը պայմանավորված է *միոգլոբինի* քանակությամբ: Լինում են գորշ կարմրավուն և սպիտակ: Մարդու Մ-ում պարունակվում են և՛ սպիտակ, և՛ կարմիր մկանաթելեր: Սպիտակ Մ. բնորոշ են թռչուններին: Մ. բազմաձև են, առավել տարածված են իլիկաձև և տափակ Մ., սակայն կան նաև փետրաձև, ռոմբաձև, քառանկյուն ևն: Տարբերում են նաև երկգլխանի, եռգլխանի և քառագլուխ Մ.: Ըստ մկանաթելերի ուղղության լինում են ուղիղ, թեք, լայնաձիգ և շրջանաձև Մ., ըստ ֆունկցիայի՝ ծալիչներ և տարածիչներ, զատիչներ և առբերիչներ, սեղմիչներ և լայնիչներ, պտտողներ, բարձրացնողներ ևն: Մ. օժտված են նաև օժանդակ ապարատներով՝ փակեղներ, ձուսպաբունոցներ, ձուսպապարկեր, մկանային ճախարակներ և քունջութաձև ոսկրիկներ, որոնք նպաստում են Մ-ի աշխատանքին: Դասավորվելով հոդի շրջանում՝ յուրաքանչյուր մկան կատարում է միայն մեկ շարժում: Միևնույն գործողությունը կատարող Մ. կոչվում են սիներգիստներ (համագործակիցներ), հակառակ գործողություն կատարողները՝ անտագոնիստներ (հակագործակիցներ): Մ-ի կծկողական ֆունկցիան բնութագրում են «բացարձակ ուժով», որը համեմատական է Մ-ի ընդլայնական կտրվածքին (արտահայտվում է *կգ/սմ²*-ով): Օրինակ, մարդու երկգլխանի մկանի բացարձակ ուժը 11,4 է, ծնկամկաններինը՝ 9 *կգ/սմ²*: Մ-ի սիստեմատիկ լարված աշխատանքը մեծացնում է դրանց զանգվածը, ուժը և աշխատունակությունը, իսկ չափից ավելի աշխատանքը հանգեցնում հոգնածության և աշխատունակության անկման: Մ-ի անգործությունը պատճառ է դառնում դրանց ետաճման:

Մարդու կմախքային Մ-ի վերաբերյալ պատկերազարդումը տես հ. 1, 376 էջից հետո՝ ներդիրում:

*Վ. Գրիգորյան, Ա. Սարաֆյան*

**ՄԿԱՆՈՒՌՈՒՑՔ**, միոմա, մկանային հյուսվածքի բարորակ ուռուցք: Զարգանում է արգանդի, ստամոքսի, աղիքների, մաշկի հարթ մկանունքից (լեյոմիոմա), կմախքի միջաձիգ զոլավոր մկանունքից կամ սրտամկանից (ռաբդոմիոմա): Մկանաթելերի հետ սովորաբար լինում է նաև շարակցական հյուսվածք, և ուռուցքը տվյալ դեպքում անվանում են ֆիբրոմիոմա: Առավել հաճախ հանդիպում է արգանդի Մ. (ֆիբրոմիոմաներ): Լինում է տարբեր մեծության և ձևի հանգույցների տեսքով, երբեմն կշիռը կարող է հասնել մի քանի *կգ*: Առաջացման պատճառներ կարող են դառնալ ձվարանների հորմոնային խանգարումները (առավել հաճախ 30 տարեկանից հետո): Ախտանշանները. երկարատև արգանդային արյունահոսություն, սակավարյունություն, միզապարկի, փոքր կոնքի արյան անոթների և նյարդերի ճնշվածություն: Ուռուցքի աճումը շարունակվում է մինչև դաշտա-

նային ցիկլի դադարումը (50—55 տարեկան): Ուռուցքի հայտնաբերման դեպքում անհրաժեշտ է բժշկի հսկողություն և զննումներ տարեկան 3—4 անգամ: Բուժումը՝ պահպանողական, անհրաժեշտության դեպքում՝ վիրաբուժական միջամտություն:

**ՄԿՆԱԲԱԶԵՆԵՐ** (Circus), ճուռակների ընտանիքի գիշատիչ թռչունների սեռ: Մարմնի երկարությունը 41—60 *սմ* է: Թևերը, պոչը, ոտքերը երկար են, մատները՝ կարճ: Պարանոցի և գլխի փետուրներն առաջացնում են դիմային սկավառակ, որը բնորոշ է բվերին: Արուները սպիտակավուն են, էգերը և ձագերը՝ գորշ կամ շիկավուն: Տարածված են ամենուր, բացի Արկտիկայից և Անտարկտիդայից: Բաց տարածությունների թռչուններ են: Բնադրում են գետնի վրա, դնում 3—6 ձու: Թխսում է էգը (մոտ 1 ամիս): Սնվում են կրծողներով, մողեսներով, գորտերով, այլ թռչունների ձագերով ու ձվերով: Հայտնի է Մ-ի 9 տեսակ, որից 5-ը՝ ՍՍՀՄ-ում, 4-ը՝ նաև ՀՍՍՀ-ում: Ճ ա հ ճ ա յ ի ն Մ. հանդիպում են ամենուր, ուր կան եղեգնապատ ճահճուտներ, մ ա ր գ ա գ ե տ ն ա յ ի ն Մ. բնադրում են Արաքսի հովտում, տ ա փ ա ս տ ա ն ա յ ի ն Մ. տարածված են անտառազուրկ շրջաններում, իսկ դ ա շ տ ա յ ի ն Մ. ՀՍՍՀ-ում ոչ միայն բազմանում, այլև ձմեռում են: Մ-ի բոլոր տեսակները, բացի ճահճային Մ-ից, որոնք ոչնչացնում են ջրային թռչուններին և ճահճակուղբերին, օգտակար են: *Գ. Մանուչարյան*

**ՄԿՆԱՓՈՒՇ** (Ruscus), ա ս ե ղ ն ո ւ կ, ծնեբեկազգիների ընտանիքի երկտուն, մշտադալար կիսաթփերի ցեղ: Սողացող կոճղարմատներով, խիտ ճյուղավորված բույսեր են: Տերևները վեր են ածվել մանր, ժապավենաձև թեփուկների, տերևանութներից դուրս են գալիս տերևի ֆունկցիա կատարող փշոտ ճյուղիկներ՝ ֆիլոկլադիումներ: Ծաղիկները մեկական են կամ 2—6 հատ, ծաղկապատյանը կանաչավուն է, պարզ, վեցփեղկանի: Առէջքները երեքն են, պտուղը հատապտուղ է: Հայտնի է Մ-ի 5—6 տեսակ՝ տարածված Կանարյան, Ազորյան կղզիներում, Արևմտյան Եվրոպայում, Ղրիմում, Կովկասում (ՍՍՀՄ-ում՝ 4 տեսակ): Մ-ի բոլոր տեսակները մշակվում են որպես դեկորատիվ բույսեր, որոշ տեսակներ կեր են անասունների համար: Երևանի բուսաբանական այգում աճեցվում են Մ-ի հ ի ր կ ա ն յ ա ն (R. hyrcanus) և պ ո ն տ ա կ ա ն (R. ponticus) տեսակները: *Ա. Գրիգորյան*

**ՄԿՆԴԵՂ**, տես *Արսեն*:

**ՄԿՆԴԵՂԱՅԻՆ ՀՐԱՔԱՐ**, տես *Արսենապիրիտ*:

**ՄԿՆԴԵՂԻ ՀԱՆՔԱՆՅՈՒԹԵՐ**, ա ր ս ե ն ի հ ա ն ք ա ն յ ո ւ թ ե ր, բնական միներալային առաջացումներ, որոնց մեջ մկնդեղի (As) պարունակությունը բավարար է նրա և միացությունների տնտեսապես շահավետ կորզման համար: Հայտնի են As պարունակող ավելի քան 120 միներալ: Առավել տարածված են *արսենապիրիտը* (մկնդեղային հրաքարը), լյոլինգիտը՝ $FeAs^2$ (72,8% As), *ռեալգարը*, *աուրիպիգմենտը*: Ըստ արդ. դասակարգման Մ. հ-ի հանքավայրերը ստորաբաժանվում են մի շարք տիպերի՝ մ կ ն դ ե ղ ա յ ի ն (արսենապիրիտային և ռեալգարաուրիպիգմենտային), ն ս կ ի-մ կ ն դ ե ղ ա յ ի ն, բ ա զ մ ա մ ե տ ա ղ-մ կ ն դ ե ղ ա յ ի ն, մ կ ն դ ե ղ-կ ա պ ա ր ա յ ի ն: As-ի առավելագույն պարունակությունը արդ. հանքանյութերում կազմում է 2%, սակայն սովորաբար մշակվում են ավելի հարուստ (5—10%) հանքանյութերը: Ավելի աղքատ հանքանյութերը հարստացվում են գրավիտացիոն մեթոդներով և ֆլոտացիայով: Մ. հ-ի հանքավայրերը հայտնի են ՍՍՀՄ-ում, ԱՄՆ-ում, Շվեդիայում, Մեքսիկայում, Ճապոնիայում, Բոլիվիայում:

**ՄԿՆԵՐ** (Muridae), *կրծողների* կարգի կաթնասունների ընտանիք: Մարմնի երկարությունը 5—50 *սմ* է, պոչինը՝ մինչև 45 *սմ*: Տարածված են Արևելյան կիսագնդի տաք և բարեխառն գոտիներում (Ամերիկայում հանդիպում են միայն տնային մկներ և առնետներ): Ընտանիքն ընդգրկում է ժամանակակից 80 և անհետացած 12 սեռ (ավելի քան 400 տեսակ): Մ-ի մեծամասնությունը ապրում են գետնափոր բներում, սնվում գլխավորապես սերմերով, երբեմն՝ միջատներով ու փոքր կաթնասուններով: Ակտիվ են մթնշաղին և գիշերը: Բազմանում են տաք եղանակին (տարեկան մինչև 6 անգամ), սինանթրոպ տեսակները՝ ամբողջ տարին, ծնում են 2—8 ձագ, որոնք սեռահասուն են 1,5—3 ամսում: ՍՍՀՄ-ում տարածված է Մ-ի 11 տեսակ (5 սեռ), ՀՍՍՀ-ում՝ 3 սեռի (առնետներ, մկներ, անտառամկներ) 4 տեսակ (սև առնետ, գորշ առնետ, տնային մուկ, անտառամուկ): Մ. վնասում են գյուղատնտեսությանը և անտառատնտեսությանը, փչացնում սննդամթերքը և որոշ արդ. ապրանքներ, տարածում մի շարք վտանգավոր հիվանդությունների հարուցիչներ: Պ ա յ ք ա ր ի մ ի ջ ո ց ն ե ր ը՝ մեխանիկական, քիմիական, բակտերիալոգիական:

**ՄԿՐԱԳՈՄ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Մուշի գավառում: 1909-ին ուներ 80 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ և արհեստներով: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է աքսորի ճանապարհին:

**ՄԿՐԱՏ**, տարբեր նյութեր կտրելու ձեռքի գործիք, սարք կամ մեքենա: Ձեռքի Մ-ով կտրում են գործվածք, թուղթ են: Տարբերում են կենցաղային, ատաղձագործական, թիթեղ կտրելու, դերձակի, բժշկական և այլ Մ-ներ: Տարբեր նյութեր կտրելու համար (վերանորոգման արհեստանոցներում) կիրառում են սկավառակավոր և ուղղագիծ դանակներով ստացիոնար և շարժական սարքավորումներ: Թերթավոր և շերտավոր նյութերի, խողովակների, ձևավոր գլոցման պրոֆիլները կտրում են առավել հզոր մեքենաներով: Այդպիսի Մ-ները ըստ աշխատանքային օրգանի կառուցվածքի լինում են հատիչ, գիլյոտինային, ալիգատորային (լծակավոր), սկավառակավոր են: Դրանցով կարելի է կտրել պողպատե թերթեր՝ մինչև 60 *մմ* և կլոր գլոցուկ՝ մինչև 165 *մմ* հաստությամբ:

**ՄԿՐՅԱՆ** Հովհաննես Կարապետի (1831, Պարտիզակ —1909), հայ բանասեր, պատմաբան, հասարակական գործիչ: 1866-ին ձեռնադրվել է քահանա, վարել Կ. Պոլսի պատրիարքարանի փոխանորդի պաշտոնը: 1878-ին, իբրև պատրիարքարանի պատվիրակ, մեկնել է Լոնդոն, Հայկական հարցի կապակցությամբ իր հետ տանելով Արևմտյան Հայաստանի վիճակի վերաբերյալ տեղեկագիրը: Պատմաբանասիրական բնույթի հոդվածներով թղթակցել է արևմտահայ մամուլին: 1886-ին լույս է ընծայել «Կենսագրություն Մեսրովբա Դավթյան Թաղիադյանց Երևանեցվո» ուսումնասիրությունը, որտեղ առաջին անգամ ներկայացրել է Մ. Թաղիադյանի գրական ու հասարակական գործունեությունը: Հրատարակել է «Մահարձանք և հիշատակարան» (1877) հնագիտական նյութերի ժողովածուն և «Ազգապատում Պատկանյան տոհմի» (1889, «Ար'ւելք») գործը: Մ-ի արխիվը պահվում է Անթիլիասի կաթողիկոսական դիվանում:

*Գրկ.* Թ ե ո դ ի կ, Ամենուն տարեցույցը, ԿՊ, 1910: *Ռ. Նանումյան*

**ՄԿՐՅԱՆ** Մկրտիչ Մամբրեի (ծն. 9.11. 1907, Վան), հայ սովետական գրականագետ: Բանասիրական գիտ. դ-ր (1945), պրոֆեսոր (1946), ՀՍՀ ԳԱ թղթակից անդամ (1956), ՀՍՀ գիտ. վաստ. գործիչ (1961): ՍՄԿԿ անդամ 1941-ից: 1915-ին գաղթել է Արևելյան Հայաստան, 1919-ից


Մ. Մ. Մկրյան

հաստատվել Երևանում: Ավարտել է Երևանի համալսարանը (1930), որտեղ և 1933-ից դասախոսում է հայ գրականության պատմություն: 1941—47-ին և 1957—1976-ին եղել է բանասիրական ֆակուլտետի դեկան, 1954—80-ին՝ հայ գրականության ամբիոնի վարիչ, 1947—53-ին՝ ՀՍՀ ԳԱ Աբեղյանի անվ. գրականության ինստ-ի դիրեկտոր: 1938-ին տպագրվել է նրա «XIII—XVIII դդ. հայ աշխարհիկ գրականություն»-ը, որը ներառնում է Ֆրիկի, Քուչակի, Կոստանդին Երզնկացու, Սայաթ-Նովայի և այլոց ստեղծագործությունները՝ ընդարձակ առաջաբանով: «Գրիգոր Նարեկացի» (1955) մենագրության մեջ Նարեկացու ստեղծագործությունը դիտում է որպես հայկ. Վերածննդի առաջին արտահայտություն: 1957-ին լույս է տեսել Մ-ի «Էջեր հայ վիպասանության պատմությունից» գիրքը, որն ընդգրկում է Խ. Աբովյանի, Պ. Պռոշյանի, Նար-Դոսի, Րաֆֆու որոշ ստեղծագործությունների վերլուծությունը՝ նորովի մեկնաբանությամբ ու գնահատականով: «Մովսես Խորենացի» (1970, ռուս. հրտ. 1969) մենագրությունը, կենսագրությունից բացի, ներկայացնում է Խորենացու «Հայոց պատմու-

թյունը» գիտական, գաղափարական ու գեղարվեստական տեսանկյունից, քննում այդ երկի ազդեցությունը հայկ. կլասիցիզմի, ինչպես և հայ նոր գրականության ձևավորման վրա: Մ. հրատարակել է նաև «Իսահակյանի հումանիզմը» (1975), «Հայ հին գրականության պատմություն (V—X դարեր)» (1976), «Հովհաննես Թումանյանի ստեղծագործությունը» (1981) աշխատությունները: 1935-ից սկսած կազմել է հայ գրականության քրեստոմատիաներ (VII, VIII, IX, X դասարանների համար): Մ-ի VIII դասարանի «Հայ գրականություն» դասագիրքն ունեցել է 12 հրատարակություն: Գրել է նաև «Հայ գրականության պատմություն» (1974) սփյուռքի միջնակարգ դպրոցների համար:

**ՄԿՐՏԱՐԱՆ**, վաղ քրիստոնեության շրջանում տարածում գտած շինություն (եկեղեցուն մոտ կամ կից) *մկրտության* ծիսակատարության համար: Ճարտարապետորեն առնչվում է հեթանոսական շրջանում ջրի պաշտամունքին նվիրված հատուկ շինություններին, ինչպիսիք էին



Արզնիի մկրտարանի (VI դ.) հատակագիծը

Բարձր Հայքից մինչև Հռոմ փոյուգիացիների տարածած Փոյուգիանումը, հելլենիստական Նիմֆեոնը և, հավանաբար, Հայաստանի *Թուխ Մանուկ* կոչված կառույցները: Մ-ները ունեցել են երկու լուծում՝ ա. մկրտության ավազանը տեղադրվել է հատուկ շենքում, որը կոչվել է մ կ ր տ ա տ ո ւ ն (կառուցվել են մինչև XIV դ., հետագայում՝ Տրիդենտյան ժողովի որոշումով արգելվել են, որի հետևանքով մկրտության արարողությունը տեղափոխվել է եկեղեցու ներսը), բ. ավազանը տեղադրվել է եկեղեցու ներսում կամ նրան կից: Երկու լուծումներն էլ հայ եկեղեցու կանոնների համաձայն (Սահակ Պարթևի կանոնախումբ, V դ., Դվինի ժողով, 554) կիրառվել են վաղ քրիստոնեության շրջանից սկսած և բնորոշ են հայ ճարտ-յանը: Մկրտատան և ավազանի հատակագծային ձևերը՝ ուղղանկյուն, բոլորաձև, վեցանիստ, ութանիստ, խաչաձև, ունեցել են հեթանոսությունից փոխանցված նշանաբանական իմաստ: IV դարից այդ ձևերը հաստատվել են նախ արլ., ապա՝ արմ. եկեղեցիների կողմից:

Հայ ճարտ-յան հնագույն Մ-ներից է Ողջաբերդի մկրտատունը (IV դ.): Ավերակ այս կառույցը ունի քառակուսի հատակագիծ, արլ. աբսիդ, ութանիստ թմբուկով գմբեթ: Ասորիքում կան Ողջաբերդի տիպի ավելի ուշ շրջանի կառույցներ՝ Դար Քիտա (422) և Բեհիա (VI դ.): Փոքր չափերի կենտրոնակազմ, գմբեթածածկ կառույցների մի մասը Հայաստանում հավանաբար եղել են մկրտատուներ, որոնք հետագայում օգտագործվել են որպես *մատուռ*: Դրանցից է Արզնիի Ս. Կիրակին (VI դ.), որն ունի արտաքուստ ութանիստ, ներքուստ՝ քառաթև, կիսաշրջան վերջավորություններով հատակագիծ: Ութանիստ փոքրաչափ կառույցը որպես մկրտատուն տարածված է եղել IV—V դդ. հատկապես Իտալիայում (Միլանի Սան Ջովաննի դի Սանտիա Տեկլա, Սանտ Ակուիլինո դի Սան Լորենցո, ինչպես և Ռավեննայի, Պարենցոյի, Պարմայի, Ֆլորենցիայի Մ-ները): Հայկ. Մ-ների դասական տիպերից են խաչաթև գմբեթավոր կառույցները (Տովիզի Ս. Աստվածածին, V դ., Տայքի Ս. Խաչ, V դ., Օշականի Մանկանոց, VII դ.): Այն դեպքում, երբ մկրտատուն չի կառուցվել, ավազանը տեղադրվել է՝ ա. եկեղեցու ներսում, հս. պատի արլ. մասի խորշում՝ Աշտարակի Ծիրանավոր, Շենիկի Ս. Աստվածածին (պահպանվել են մկրտության ծիսակատարության որմնանկարի հետքեր), ուշագրավ է Էջմիածնի Մայր տաճարի (IV դ.) Մ-ի օրինակը (հորի ձևով ավազանը տեղադրված է եղել ավանդատան մեջ), բ. ավազանը տեղադրվել է եկեղեցուն կից, արլ. ավանդատներից դեպի դուրս երկարող թևերի աբսիդներում, որոնք համապատասխանում են կառույցը շրջափակող սյունաշար սրահի ծայրամասերին (Տեկոր, Գառնիի բազիլիկը): Եզակի է Զվարթնոցի օրինակը. պեղումներով բացված ավազանը Ավազ խորանի ետևի հվ. անկյունում է:

*Գրկ.* K h a t c h a t r i a n A., Les baptistères paléochrétiens, P., 1962.

*Ա. Զարյան*

**ՄԿՐՏԻՉ Ա ՎԱՆԵՑԻ**, Խ ր ի մ յ ա ն Հ ա յ ր ի կ (4.4.1820, Վան —29.10.1907, Վաղարշապատ), հասարակական-քաղաքական գործիչ, Հայոց կաթողիկոս 1893-ից: Սովորել է Վասպուրականի Լիմ և Կտուց անապատների դպրոցներում: 1842-ին հաստատվել է Կ. Պոլսում: 1847-ին ճանապարհորդել է Պարսկաստանում և Անդրկովկասում, այցելել Երուսաղեմ: 1848—50-ին ուսուցչություն է արել Կ. Պոլսի Խասգյուղ թաղամասի դպրոցում, հանդես եկել հայրենասիրական քարոզներով: Կ. Պոլսի Հայոց պատրիարքարանի հանձնարարությամբ 1851-ին մեկնել է Կիլիկիա, ուսումնասիրել տեղի հայության կյանքը, նպաստել կրթական գործի զարգացմանը: 1854-ին ձեռնադրվել է վարդապետ: 1855-ին Կ. Պոլսում հիմնադրել է «*Արծվի Վասպուրական*» պարբերականը: 1856-ին վերադառնալով Վան դարձել է Վարագա վանքի վանահայրը, 1857-ին հիմնադրել տեղի ժառանգավորաց գիշերօթիկ վարժարանը: 1858-ին վերսկսել է «Արծվի Վասպուրական»-ի հրատարակումը: 1860-ին այցելել է Արևելյան Հայաստան, ծանոթացել տեղի հայ կյանքին: 1862-ին ստանալով նաև Տարոնի հոգևոր առաջնորդի պաշտոնն ու Ս. Կարապետ վանքի վանահայրությունը՝ ձեռնարկել է նոր ժառանգավորաց վարժարանի և «*Արծվիկ Տարոնոյ*» երկշաբաթաթերթի հիմնադրումը, որոնց տնօրինությունը հանձնել է Գ. *Սրվանձտյանին*: Մ. Ա Վ. բազմիցս այցելել է Տարոնի հայկ. գյուղերը, փորձել սահմանափակել թուրք և քուրդ աղաների հարստահարությունները, թեթևացնել հայ գյուղացու ծանր վիճակը: Ժողովրդի մեջ նա մեծարվել է «Հայրիկ» պատվանունով: 1868-ին Էջմիածնում օծվել է եպիսկոպոս, 1869-ին ընտրվել


Մկրտիչ Ա Վանեցի

Կ. Պոլսի Հայոց պատրիարք (մինչև 1873-ը), պայքարել է *Ազգային սահմանադրության* վերանայման՝ գավառաբնակ արևմտահայության պատվիրակների թիվը *Ազգային ժողովում* ավելացնելու համար: Նրա նախաձեռնությամբ Ազգային ժողովում քննվել է գավառահայության հարըստահարությունների խնդիրը և 1872-ի ապրիլին թուրք. կառավարությանը ներկայացվել տեղեկագիր-բողոքագիր: Մ. Ա Վ-ու գործունեությունը հարուցել է ոչ միայն թուրք. կառավարության, այլև Կ. Պոլսի հայ մեծահարուստների թշնամությունը, ուստի 1873-ին նա հրաժարվել է պատրիարքությունից: Եղել է 1878-ի կոնգրեսի (տես *Բեռլինի կոնգրես 1878*) հայկ. պատվիրակության ղեկավարը: Նախապես Մ. *Չերազի* հետ այցելել է եվրոպ. մի շարք երկրներ, փորձել դիվանագիտական ճանապարհով լուծել *Հայկական հարցը*: Բեռլինի կոնգրեսից հետո հիասթափվել է եվրոպական պետություններից, հանդես եկել ազգային-ազատագրական պայքարի կոչով: 1879-ին ընտրվել է Վանի հոգևոր առաջնորդ, 1880-ին Վանում բացել է երկրագործական ուսումնարան: Աջակցել է Վանի «Սև խաչ» և Կարինի «Պաշտպան հայրենյաց» ազգային-ազատագրական գաղտնի կազմակերպությունների ստեղծմանն ու գործունեությանը, որի համար ետ է կանչվել Կ. Պոլիս: 1890-ին Ազգային ժողովը Մ. Ա Վ-ու նախաձեռնությամբ 2 տեղեկագիր-բողոքագիր է ներկայացրել թուրք. կառավարությանը, որը, ուխտ ուղարկելու անվան տակ, նույն թվականին նրան աքսորել է Երուսաղեմ: 1892-ի մայիսին ընտրվել է Ամենայն Հայոց կաթողիկոս (1893-ի սեպտ. 26-ին օծվել է Էջմիածնում): Չնայած հոգևորական բարձր պաշտոնին, հարազատ է մնացել ազգային-ազատագրական դիրքորոշմանը: 1895-ին մեկնել է Պետերբուրգ և Նիկոլայ II ցարից հայցել նրա պաշտպանությունը Արևմտյան Հայաստանում խոստացված բարենորոգումների իրականացման համար: Թուրք. կառավարության կազմակերպած 1895—96-ի հայկ. ջարդերի ժամանակ խնդրագրեր է հղել ցարական պաշտոնյաներին, հանգանակություններ հավաքել, նյութապես օգնել Արևելյան Հայաստան անցած արևմտահայ գաղթականությանը: Եռանդուն պայքար է մղել հայ եկեղեցապատկան ունեցվածքը բռնագրավելու մասին 1903-ի հունիսի 12-ի ցարական օրենքի դեմ, արգելել հայկ. եկեղեցական թեմերին ենթարկվելու այդ որոշմանը:

Մ. Ա Վ. հեղինակ է «Հրավիրակ Արարատյան» (1850), «Հրավիրակ երկրին ավետյաց» (1851)՝ չափածո, «Մարգա-

րիտ արքայության երկնից» (1866), «Վան-շ գույժ» (1877), «Հայգույժ» (1877), «Ժամանակ և խորհուրդք յուր» (1878)՝ կրոնափիլիսոփայական, «Սիրաք և Սամվել» (1878), «Պապիկ և թոռնիկ» (1894)՝ բարոյախոսական, ևն գրքերի, որոնցում արտահայտել է ժողովրդի վշտերը, հույզերն ու տառապանքները: Մ. Ա Վ-ու կրոնական փիլիսոփայությունը սերտորեն կապված է բարոյագիտությանը և հանգում է հումանիզմին: Մ. Ա Վ. ընդունում է ազգերի պատմական կատեգորիա լինելը, գտնում, որ ոչ մի ազգ իրավունք չունի ճնշել մյուսին: Դատապարտում է զավթողական պատերազմները, միաժամանակ, իր ազատագրության համար պայքարող ազգի բարոյական պարտքը համարում արդարացի պատերազմը:

*Երկ.* Ամբողջական երկեր, Նյու Յորք, 1929:

*Գրկ.* Խրիմյան Հայրիկ, Փարիզ, 1925: Աճեմյան Հ., Հայոց Հայրիկ, Թավրիզ, 1929: Երամյան Հ., Հուշարձան Վան-Վասպուրականի, հ. 1, Ալեքսանդրիա, 1929: Պալճյան Վ., Խրիմյան Հայրիկ որպես դաստիարակ, Պուքրեշ, 1943: Գյուզալյան Գ., Խրիմյան Հայրիկ (գաղափարների աշխարհը), Բեյրութ, 1962: Հովհաննիսյան Ռ., Արևմտահայ ազգային-ազատագրական շարժումները և Կարինի «Պաշտպան հայրենյաց» կազմակերպությունը, Ե., 1965:

*Է. Կոստանդյան*

**ՄԿՐՏԻՉ** Կորյուն [Կորյուն Գրիգորի Մկրտչյան, ծն. 19.5.1913, գ. Ղզլչախչախ (Կարսի մարզում)], հայ սովետական գրող: ՍՄԿԿ անդամ 1938-ից: Բան. գիտ. թեկնածու (1947): Ավարտել է Երևանի համալսարանի բանասիրական ֆակուլտետը (1937): Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: Մ-ի ստեղծագործության մեջ զգալի տեղ են գրավում քնարական գործերը: Բանաստեղծությունների առաջին ժողովածուն («Տեմպերի հերոսներ») լույս է տեսել 1932-ին: Հրատարակել է «Կյանքի ու սիրո երգեր» (1937), «Սաղկաձոր» (1938), «Իմ նվերը» (1954) բանաստեղծությունների ժողովածուները, «Առակներ, հեքիաթներ, պատմվածքներ» (1945), «Մանուկների հետ» (1956), «Հեքիաթներ, պիեսներ» (1961), «Հանելուկներ» (1970), «Իմ ընթերցարանը» (1971) գրքերը: Մ. զարգացրել է հայ առակագրությունը: 1980-ին լույս է տեսել նրա «Անմեղ կատակներ». ժողովածուն: Մ-ի արձակ գործերից է նաև «Կամո» (1947) պատմակենսագրական վեպը: Թարգմանել է «Ջանգար» կալմիկական էպոսը, Ա. Նավոիի «Ֆահրադ և Շիրին», Մ. Գորկու «Աղջիկն ու մահը» պոեմները, Կ. Խեթագուրովի «Օսեթական քնար» ժողովածուն, Ի. Կռիլովի, Կ. Չուկովսկու, Ս. Մարշակի և ուրիշների ստեղծագործություններից:



Մկրտիչ Կորյուն

Թարգմանվել է ռուսերեն և ՍՍՀՄ այլ ժողովուրդների լեզուներով: Նրա տեքստերով գրվել են երգեր:

*Երկ.* Հատընտիր, Ե., 1976:

*Գրկ.* Մկրտիչ Կորյուն, Ե., 1973:

**ՄԿՐՏԻՉ ՆԱՂԱՇ** (մոտ 1394, գ. Պոռ, Բաղեշի գավառ — մոտ 1470), միջնադարյան հայ տաղերգու, նկարիչ, հասարակական-եկեղեցական գործիչ: Ծնվել է քահանայի ընտանիքում: Հոր անունը՝ Առաքել: Մ. Ն-ի կենսագրությունը («Ցիշատակարան գրոցս պատմագրաբար...»), դեռևս նրա կենդանության օրոք, գրել է Աստվածատուր վարդապետը (դեպքերը հասցնելով մինչև 1449-ը): 1420-ական թթ. միակ որդու՝ Մեսրոպի հետ տեղափոխվել է Միջագետքի Ամիդ քաղաքը: 1430-ին Սսի կաթողիկոս Կոստանդին Զ Վահկացին վարդապետ Մ. Ն-ին ձեռնադրել է եպիսկոպոս, 1431-ին նշանակել Ամիդի եպիսկոպոս և Միջագետքի հայոց հոգևոր առաջնորդ:

Մ. Ն. կրթությունն ստացել է Բաղեշի Ս. Անանիա և Ս. Գևորգ վանքերում, թերևս նաև Մեծոփավանքում՝ աշակերտելով Թովմա Մեծոփեցուն: Ըստ կենսագրի, «...զամենայն դիւրաւ ուսանէր և զամենայն դժուարին արուեստ մի անգամ տեսանելով, նա գերագոյն քան զօրինակն՝ ներգործէր...»: Վաղ են դրսևորվել Մ. Ն-ի թե՛ բանաստեղծական և թե՛ նկարչական ձիրքերը:

«Անհամեմատ նկարիչ» լինելու համար ստացել է Նաղաշ (նկարիչ, ծաղկող) մականունը: Հմուտ է եղել նաև գրչության արվեստում: Նրա գրչագրած և նկարազարդած մի քանի ձեռագրեր հասել են մեզ: Մ. Ն. տիրապետել է արաբ. մի շարք լեզուների: Իր մարդասիրությամբ ու մարքակենցաղ վարքով վայելել է ոչ միայն հայերի, այլև այլազգիների համակրանքը: Լավ հարաբերություններ է ունեցել Միջագետքի Օթման բեկ ամիրայի հետ, որի շնորհիվ նրան հաջողվել է որոշ արտոնություններ ձեռք բերել հայ ազգաբնակչության համար: Մ. Ն. ծավալել է նաև շինարարական-կառուցողական աշխատանքներ: 1434-ին նրա նախաձեռնությամբ կառուցվել է Արղնիի Բարձրահայաց Ս. Աստվածածին եկեղեցին, իսկ 1439—1443-ին վերակառուցվել Ամիդի Ս. Թեոդորոս կաթողիկեն: Վերջինիս գմբեթը բարձր է եղել քաղաքի մինարեներից, և դա առիթ է դարձել, որպեսզի մոլեռանդ մահմեդականները հալածանք սկսեն Մ. Ն-ի դեմ: Օթման բեկի որդի Համզան, որ հաջորդել էր հորը, հրամայել է քանդել կաթողիկեի գմբեթը: Մ. Ն. ծանր վիշտ է ապրել և հեռացել Ամիդից, գնացել նախ՝ Կ. Պոլիս, ապա՝ Կաֆա (Թեոդոսիա), չորս տարի մնացել այնտեղ: Համզային հաջորդած որդին՝ Ջհանգիր միրզան, Մ. Ն-ին հրավիրել է Ամիդ, թույլ տվել վերակառուցելու կաթողիկեն՝ չափավոր բարձրությամբ: Վերակառուցումն ավարտվել է 1447-ին՝ Ներսամատ վարպետի ձեռքով:

1449-ին բռնկել է Միջագետքի առաջին, իսկ 1469-ին՝ երկրորդ համաճարակը: 1469-ին Մ. Ն. գրել է մի ողբ՝ այդ համաճարակի ցնցող աղետի մասին: Հավանաբար, նա վախճանվել է այդ կամ հաջորդ տարին. տեղը հայտնի չէ:

Մ. Ն. գրել է տաղեր, հիշատակարաններ, «Պատասխան ի լատինացոց թխտոյն» (1436) պատմական փաստաթուղթը, վերջինս՝ Սսի կաթողիկոս Կոստանդին Վահկացու և Թովմա Մեծոփեցու հանձնարարությամբ: Այստեղ նա անդրադարձել է հայ և լատին եկեղեցիների միության՝ Վատիկանի ժողովում քննարկվելիք խնդրին. հույները ձգտում էին եկեղեցիների միության շնորհիվ օգնություն ստանալ Արևմուտքից՝ թուրք. վտանգին դիմագրավելու համար: Մ. Ն. հունա-լատ. եկեղեցու գերիշխանության գաղափարին հակադրել է հայ եկեղեցու անկախության ու հավասարության գաղափարը՝ եկեղեցիների միության երաշխիքը տեսնելով այդ հավասարության ճանաչման մեջ:

Մ. Ն. իր գեղեցիկ ու ինքնատիպ տաղերով միջնադարյան քնարերգությունը բարձրացրեց մի նոր աստիճանի՝ խորացնելով նրա մարդասիրական ու աշխարհիկ բովանդակությունը: Բնության և սիրո տաղերում («Տաղ ի դէմս մարգարէիցն և Քրիստոսին և Լուսաւորչին», «Տաղ հարսանեաց և ուրախութեան մարդկան») երևան է գալիս բանաստեղծի լավատեսությունը, ջերմ վերաբերմունքը բնության գեղեցկությունների, ազնիվ ու փոխադարձ սիրո նկատմամբ: «Տաղ վասն բլբուլին և վարդին» ոտանավորում բանաստեղծը երգում է մարդու նվիրական ու մաքուր զգացմունքները: Սակայն հասարակական տրամադրություններով ապրող Մ. Ն-ի ստեղծագործության մեջ ամենաբնորոշը սոցիալական, խոհա-խրատական մոտիվներն են: XV դ. հոգևորականության մեջ խորացել էր բարոյալքման պրոցեսը. վանքերը դարձել էին շվայտության օջախներ: Արծաթասիրության, կաշառակերության, դավերի ու խարդավանքների մերկացման գեղարվեստական հուշարձան է Մ. Ն-ի *«Խրատական բանքս ագահութեան և անընչութեան ի Նաղաշ վարդապետէ ասացեալ»* բանաստեղծությունը: Նա ձաղկել է թե՛ աշխարհիկ տերերի, թե՛ հոգևորականության հոռի բարքերը:

Մ. Ն-ի տաղերի մի մասն ունի ուսուցողական, խրատական բնույթ: Շարունակելով միջնադարյան քնարերգության հիմնական թեմաներից մեկը՝ մահվան թեման, Մ. Ն. արծարծել է քրիստոնեական բարոյականության գաղափարները, սակայն գեղագիտական ուրույն մոտեցումով ու մեկնաբանությամբ: Մահը մի դիտակետ է, որտեղից նա նայում է կյանքին, աշխարհին ու մարդու բարոյական վարքագծին: Աշխարհը սուտ երազ է, կյանքը՝ խաբուսիկ ու անցողիկ, ուստի մարդ չպետք է տրվի աշխարհիկ վայելքների, հարստության ու փառքի: Նաղաշը, սակայն, մահվան բանաստեղծ չէ, այլ կյանքի, որի իմաստն ու նպատակը բարի գործերն են («Խրատական բանքս ի Նաղաշ Մկրտիչ վարդապետէ ասացեալ»):

Միջնադարյան քնարերգության մեջ Մ. Ն. առաջինն է, որ ստեղծագործության նյութ է դարձրել պանդխտության թեման («Տաղ վասն ղարիպի ասացեալ»): Ծանր է պանդուխտի կյանքն օտար ափերում, նա կսկիծով է հիշում հայրենի եզերքը, օջա-

խը, հարազատներին: Կարոտը դառնում է նրա հոգու կրակը, հառաչանքը՝ ծուխը: Մ. Ն. նույնպես եղել է պանդխտության մեջ, տեսել ու զգացել այդ վիճակի ողջ դառնությունը, օտարների սառն անտարբերությունը. «Հոգի՛, մի՛ ասեր դարիպ, թէ չէ իմ սիրտս կարունի»:

Մ. Ն-ի լեզուն գրական միջին հայերենն է՝ պարզ ու մատչելի: Նրա ստեղծագործությունը, հատկապես պանդխտության երգերը, խոր ազդեցություն են թողել ուշ միջնադարի քնարերգության վրա:

*Գրկ.* Կոստանյան Կ., Մկրտիչ Նաղաշ և յուր տաղերը, Վաղ-պատ, 1898: Ջամինյան Ա., Հայ գրականության պատմություն, Նոր Նախիջևան, 1914, էջ 219—221: Աբեղյան Մ., Երկ., հ. 4, Ե., 1970: Մկրտիչ Նաղաշ, Ե., 1965 (աշխատասիրությամբ Էդ. Խոնդկարյանի): *Ա. Ղազինյան*

**ՄԿՐՏՉՅԱՆ** Լևոն Մկրտչի (ծն. 2.3.1933, ք. Ախալցխա), հայ սովետական գրականագետ, քննադատ: Բանասիրական գիտ. դ-ր (1971), պրոֆեսոր (1973): ՍՄԿԿ անդամ 1959-ից: 1958-ից դասախոսում է Երևանի համալսարանում, 1980-ից՝ ռուսաց լեզվի և գրականության ֆակուլտետի դեկան: 1975—79-ին եղել է Հայաստանի ԳՄ վարչության երկրորդ քարտուղարը: Զբաղվում է ռուս գրականության, մասնավորապես՝ դասականների (Սալտիկով-Շչեդրին, Ֆ. Դոստոևսկի, Լ. Տոլստոյ, Ա. Չեխով), հայ հին և միջնադարյան պոեզիայի ուսումնասիրությամբ, հայ-ռուսական մշակութային առնչություններով, թարգմանության տեսության հարցերով: Մ. մեծ մասամբ հրատարակվել է ռուս.՝ «Ավետիք Իսահակյանը և ռուս գրականությունը» (1963), «Հայ պոեզիան և XIX—XX դարերի ռուս բանաստեղծները» (1968), «Հարազատ և մտերիմ» (1978, ՍՍՀՄ ԳՄ վարչության մրցանակ, 1978) ևն: Հայերեն տպագրվել են «Եթե Բաբելոնում թարգմանիչներ լինեին» (1976) ժողովածու, «Հայաստանի բանաստեղծը» (1974, Վերա Զվյագինցևայի մասին) և «Վիլյամ Սարոյանը մոտիկից» (1978) գրական դիմանկարները, «Պոեզիայի հասակը» (1979) ուսումնասիրությունը: Կազմել է Ա. Իսահակյանի երկհատորյակը, Հ. Թումանյանի եռհատորյակը (Լ. Հախվերդյանի մասնակցությամբ), «Սա Հայաստանն է» (1967), «Հայ միջնադարյան քնարերգություն» (1972), «Ընթերցելով Նարեկացուն» (1974), «Հայ դասական քնարերգություն» (հ. 1—2, 1977), «Հայաստանի բանաստեղծներ» (1979) ռուս. ժողովածուները: Հրատարակել է Գրիգոր Նարեկացու «Մատյան ողբերգության» ընտիր հատվածները (բնագիր, ռուս. տողացի թրգմ., 1977), Նահապետ Քուչակի «Հարյուր և մեկ հայրեն» ժողովածու (բնագիր, ռուս. տողացի թրգմ., 1975, բնագիր, անգլ. թրգմ., ռուս. տողացի, 1979):

*Երկ.* Քաղցր է լույսը, Ե., 1980:

**ՄԿՐՏՉՅԱՆ** Հարություն Գաբրիելի [ծն. 15.4.1903, գ. Փայխներ (Վանի վիլայեթի Արճեշ գավառում)], հայ սովետական գրող, գրականագետ: ՀՍՍՀ գիտության վաստ. գործիչ (1963), բանասիրական գիտ. դ-ր (1975), պրոֆեսոր (1968): ՍՄԿԿ անդամ 1922-ից: 1916—19-ին սովորել է Գևորգյան ճեմարանում, 1923—26-ին՝ Թիֆլիսի 26 կոմիսարների անվ. կոմունիստական համալսարանում: 1940-ին ավարտել է (էքստեռն) Երևանի մանկավարժական ինստ-ի լեզվագրական ֆակուլտետը: 1931—33-ին եղել է Հայաստանի արվեստի աշխատողների միության նախագահը, 1934—37-ին՝ Հայաստանի գրողների միության առաջին քարտուղարը, «Գրական թերթ»-ի (1932, 1935—1936), «Սովետական գրականություն» («Խորհրդային գրականություն», 1934—1937, 1947—50) ամսագրի խմբագիր, գրական թանգարանի դիրեկտոր (1937—40): Մասնակցել է 1941—45-ի Հայրենական մեծ պատերազմին: 1950—68-ին՝ Երևանի հեռակա մանկավարժական ինստիտուտի հայ գրականության ամբիոնի վարիչ, 1968-ից՝ Երևանի համալսարանի հայ գրականության դասախոս: Սկսել է գրել 20-ական թթ.: Լույս են տեսել Մ-ի «Նովելներ և ակնարկներ» (1945), «Անմահական այգի» (1957), «Հայրենի երկրում» (1963) ժողովածուները, մանուկների համար՝ «Զանգակավոր գայլը» (1945), «Արագիլը» (1946) գրքույկները: «Անհայտ զինվորի հիշատակարանը» (գիրք 1—3, 1969—75) վեպում Մ. պատկերել է 1918—20-ին Հայաստանում տիրող վիճակը, հայ ժողովրդի պայքարը ներքին և արտաքին թշնամիների դեմ, սովետական կարգերի հաստատումը Հայաստանում: Հրատարակել է Մ. Նալբանդյանին, Ս. Զորյանին, Ա. Բակունցին նվիրված մենագրություններ, «Գրական դեմքեր»-ով (1953) ներկայացրել Հ. Հակոբյանի, Ա. Իսահակյանի, Դ. Դեմիրճյանի, Ն. Զարյանի, Գ. Սարյանի դիմանկարները, կազմել քրեստոմատիա IX և X դասարանների համար, գրել սովետահայ գրականության դասագիրք (1967) X դասարանի համար: Պարգևատրվել է Կարմիր աստղի շքանշանով:

*Երկ.* Միքայել Նալբանդյան, Ե., 1955: Ակսել Բակունց, Ե., 1958: Ստեփան Զորյան, Ե., 1977:



Հ. Գ. Մկրտչյան



Հ. Ռ. Մկրտչյան

**ՄԿՐՏՉՅԱՆ** Հարություն Ռուբենի [ծն. 1922, գ. Ներքին Ղանլիջա (այժմ՝ Վահրամաբերդ, ՀՍՍՀ Ախուրյանի շրջանում)], Սովետական Միության հերոս (24.3.1945), ավագ սերժանտ: Ավարտել է Երևանի գյուղատնտեսական ինստ-ը (1953): Հայրենական մեծ պատերազմին մասնակցել է 1942-ից (1943-ից՝ 89-րդ հայկական Թամանյան դիվիզիայի կազմում): Աչքի է ընկել Օրջոնիկիձեի, Նովոռոսիյսկի ուղղությամբ մղված մարտերում: Հերոսի կոչման արժանացել է Ղրիմի ազատագրման ժամանակ ցուցաբերած սխրագործության համար: Մասնակցել է նաև Լեհաստանի ազատագրմանը, Օդերի անցմանը, Ֆրանկֆուրտի և Բեռլինի գրավմանը: Պարգևատրվել է Լենինի, Կարմիր դրոշի, Հայրենական պատերազմի 2-րդ աստիճանի, Կարմիր աստղի շքանշաններով: *Կ. Հարությունյան*

**ՄԿՐՏՉՅԱՆ** Մարտիրոս Շիրազեցի (Դավթյանց Մարտիրոս, ծն. և մահ. թթ. անհտ.), XIX դարի 1-ին կեսի հնդկահայ գրող, խմբագիր, գրաքննադատ: Կալկաթայում հրատարակել է «*Շտեմարան*»-ը (1821—23), որը առաջին աշխարհաբար պարբերականներից էր: Այստեղ էլ տպագրել է իր բանաստեղծությունները (մեծ մասամբ գրաբար), առակները («Ագռավի մասին», «Բժիշկ ամոթխած», «Դարվիշ և խափշիկ» ևն), հոդվածները, որոնցում քննադատում է դատիարակչական կոպիտ մեթոդներ կիրառող քահանաներին, հանդես գալիս ստրուկներին ու սպասավորներին զանակոծելու դեմ: Հրատարակել է նաև մի կատակերգություն՝ «Խտրադիմա դժրողության» (1821), կից «Հասարակախոսություն» հավելվածուսումնասիրությամբ, որտեղ տրվում են պիեսի ստեղծման հանգամանքները, կարևորվում թատրոնի նշանակությունը: Մ-ի գրած «Վիկտորիա» այբբենարանը (1841) երկար տարիներ ուսումնական ձեռնարկ է ծառայել Կալկաթայի հայկ. դպրոցների համար: Մասնակի թարգմանություններ է կատարել Շեքսպիրից, Մոլիերից: Օգտագործել է Վ. Օ. Տ., Ներսես Ապողան, Անխաբ Եգիփան և այլ ծածկանուններ:

*Գրկ.* Կարինյան Ա., Ակնարկներ հայ պարբերական մամուլի պատմության, հ. 1, Ե., 1956: Թերզիբաշյան Վ., Հայ դրամատուրգիայի պատմություն, Ե., 1959: *Ս. Շտիկյան*

**ՄԿՐՏՉՅԱՆ** Մհեր (Ֆրունզե) Մուշեղի (ծն. 4. 7. 1930, Լենինական), հայ սովետական դերասան: ՀՍՍՀ (1971) և Վրաց. ՍՍՀ (1980) ժող. արտիստ: Սովորել է Լենինականի նկարչական ուսումնարանում (1946) և Երևանի գեղարվեստաթատերական ինստ-ի դերասանական ֆակուլտետում (1953—56): 1946-ին հրավիրվել է Լենինականի Մռավյանի անվ. թատրոն, սովորել է դրամատիկական ստուդիայում և միաժամանակ խաղացել՝ հանդես բերելով գրոտեսկային ցայտուն դերապատկեր ստեղծելու, կերպարը սրամտորեն «գունավորելու», խոսքը յուրօրինակ հնչերանգներով հարստացնելու ձիրք: Մ. աչքի է ընկել Սաղաթելի (Շիրվանզադեի «Պատվի համար»), Խլեստակովի (Գոգոլի «Ռևիզոր»), Տրուֆալդինոյի (Գոլդոնիի «Երկու տիրոջ ծառան») դերակատարումներով: 1953-ից աշխատում է Երևանի Սունդուկյանի անվ. թատրոնում: Լավագույն դերերից են՝ Գվիդոն (Ժ. Հարությունյանի «Սրտի արատ»), Եզովպոս (Գ. Ֆիգեյրեդոյի «Աղվեսն ու խաղողը»), Պաղտասար (Պարոնյանի «Պաղտասար աղբար»), Ղազար (Ժ. Հարությունյանի «Ղազարը գնում է պատերազմ»), Իսայի (Սունդուկյանի «Խաթաբալա»), Սիրանո (Ռոստանի «Սիրանո դը Բերժըրակ»): Նկարահանվում է նաև կինոյում. ճանաչված դերերից են՝ Գվիդոն («01—99»), Սիմոն («Տերն ու ծառան»), Արմեն («Զինվորն ու փիղը»), Ռուբեն («Միմինո»), Բորիս Իվանովիչ («Ունայնություն ունայնությանց»): Մ-ի արվեստին բնորոշ են կոմիկականի և


Մ. Մկրտչյանը Պաղտասարի դերում (Հ. Պարոնյանի «Պաղտասար աղբար»)

հերոսականի զուգակցումը, հումորի սքանչելի զգացողությունը, պարզ ու տպավորիչ արտահայտչամիջոցները: ՀՍՍՀ (1975) և ՍՍՀՄ (1979) պետ. մրցանակներ:

*Խ. Ավագյան*

**ՄԿՐՏՉՅԱՆ** Շողիկ Հովնանի [ծն. 1911, գ. Ընձակ (Վանի վիլայեթում)], հայ սովետական երգչուհի, ժողովրդական երգերի կատարող: ՀՍՍՀ ժող. արտիստուհի (1954): Ավարտել է Երևանի երաժշտական ուսումնարանը (այժմ՝ Ռ. Մելիքյանի անվ.): 1937-ից՝ Հայֆիլհարմոնիայի ժող. գործիքների անսամբլի մենակատար-երգչուհի: Շահել է առաջին մրցանակներ Անդրկովկասի (1934) և ՍՍՀՄ ժողովուրդների (1936) ստեղծագործության ստուգատեսներում: Մասնակցել է Մոսկվայում հայ գրականության և արվեստի տասնօրյակներին (1939, 1956): Հանդես է եկել հանրապետության և ՍՍՀՄ քաղաքներում ու արտասահմանում: Պարգևատրըվել է Աշխատանքային կարմիր դրոշի, «Պատվո նշան» շքանշաններով:

*Ա. Փահլևանյան*

**ՄԿՐՏՉՅԱՆ** Պապիկ Գրիգորի [25.12.1901, գ. Բոնակոթ (այժմ՝ ՀՍՍՀ Սիսիանի շրջանում —1937], կուսակցական և պետական աշխատող, Անդրկովկասում և Հայաստանում հեղափոխական շարժումների և սովետական կարգերի համար պայքարի մասնակից: ՍՄԿԿ անդամ 1917-ից: Սովորել է Էջմիածնի ճեմարանում և Մոսկվայի կարմիր պրոֆեսուրայի տնտեսագիտական բաժնում: 1917-ին մեկնել է Բաքու,


Պ. Գ. Մկրտչյան

աշխատել տպարանում, ուր և ընդգրկվել է հեղափոխական պայքարի մեջ: Բանվորների շրջանում մարքսիստական գրականություն և թռուցիկներ տարածելու համար ձերբակալվել է: 1919-ին փախել է բանտից: 1920-ին եղել է Նոր Բայազետի (այժմ՝ Կամո) «Սպարտակ» երիտասարդական կոմունիստական կազմակերպության ստեղծողներից: Ղեկավար մասնակցություն է ունեցել 1920-ի Մայիսյան ապստամբությանը, որի պարտությունից հետո արտաքսվել է Հայաստանից: Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո կուսակցական ղեկավար աշխատանք է տարել Դիլիջանի, Ախտայի (Հրազդան), Լոռի-Փամբակի (Կիրովական) շրջանային-գավառային կոմիտեներում: 1931-ին եղել է ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար: 1933-ին նշանակվել է Ուկրաինայի Հարավ-արևմտյան երկաթուղու քաղբաժնի պետ: Եղել է ՀամԿ(բ)Կ XIII—XV և XVII համագումարների պատգամավոր: Պարգևատրվել է Լենինի շքանշանով:

**ՄԿՐՏՉՅԱՆ** Սերգեյ Սեդրակի (24.8.1911, Աշխաբադ —26.8.1974, Երևան), հայ սովետական երկրաբան: ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1956), պրոֆեսոր (1955), գիտության վաստ. գործիչ (1961): ՍՄԿԿ անդամ 1944-ից: 1932-ին ավարտել է Ադրբեջանի պոլիտեխնիկական (հետագայում՝ նավթի) ինստ-ը: 1932—42-ին աշխատել է ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի երկրբ. վարչությունում որպես երկրաբանա-հետախուզական ջոկատների պետ և տեխ. ղեկավար, իսկ 1943—47-ին՝ գլխավոր ինժեներ և պետի տեղակալ: 1947-ից աշխատել է ՀՍՍՀ ԳԱ համակարգում. նախ՝ երկրբ. գիտ. ինստ-ի սեկտորի վարիչ, 1950—1963-ին և 1971—74-ին՝ դիրեկտոր: 1961—1967-ին ընտրվել է ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս քարտուղար, 1967—71-ին՝ ՀՍՍՀ ԳԱ փոխպրեզիդենտ: Մ. աշխատանքային գործունեությանը զուգընթաց դասախոսել է Երևանի համալսարանում: Աշխատություններում լուսաբանել է օգտակար հանածոների առաջացման ու տեղաբաշխման օրինաչափություններին՝ մագմատիզմին և երկրբ. պատմությանը վերաբերող մի շարք պրոբլեմներ: Նրա ղեկավարությամբ և ակտիվ մասնակցությամբ կատարված երկրբ. հետազոտությունները հնարավորություն ընձեռեցին հիմնավորել և ՀՍՍՀ ընդերքում բացահայտել հարուստ բնական ռեսուրսներ: Մ. մասնակցել է «Հայկական ՍՍՀ երկրաբանություն» բազմահատոր հիմնարար հրատարակության կազմման աշխատանքներին և խմբագրել այն: Մասնակցել է Միջազգային երկրբ. կոնգրեսի XXII (Հնդկաստան, 1964), XXIII (Չեխոսլովակիա, 1968) և XXIV (Կանադա, 1972) նստաշրջանների աշխատանքներին: ՍՍՀՄ պետ. մրցանակի դափնեկիր (1950): Պարգևատրվել է Լենինի և այլ շքանշաններով:

*Երկ.* Հայաստանի արդյունաբերության զարգացման միներալահումքային բազան: Հայաստանի արդյունաբերություն, 1958, № 2: Новые данные о геологическом строении южной части Армянской ССР, Е., 1948; О геологии и рудоносности Алавердского рудного района. Изв. АН Арм. ССР, сер. геол. и географ. наук, 1957, т. 10, № 3; Зангезурская рудоносная область Армянской ССР, Е., 1958.

*Գրկ.* Сергей Седракович Мкртчян [биобиблиография], Е., 1975.

**ՄԿՐՏՉՅԱՆ** Քրիստափոր (Քրիստ) Հովհաննեսի (1896, Գորիս — 1920, Սիսիան), Հայաստանում սովետական իշխանության համար մղված պայքարի մասնակից: Կոմունիստական կուսակցության անդամ 1916-ից: Հեղափոխական գործունեությունն սկսել է 1915-ին՝ Շուշիում: 1917-ին վերադարձել է Գորիս և դարձել տեղի բոլշևիկների ղեկավարներից: 1919-ին Մ., մի խումբ ընկերների հետ, Գորիսում հիմնել է բոլշևիկյան կոմիտե: Քաղաքի շրջակա գյուղերում նրա ջանքերով ստեղծվել են բոլշևիկյան բջիջներ: 1920-ի Մայիսյան ապստամբության շրջանում Մ. Զանգեզուրի ապստամբների ղեկավարներից էր: Հուլիսին, երբ Զանգեզուրում հաստատվեց սովետական իշխանություն, Մ. գավառային կոմիտեի քարտուղարն էր: Ապստամբության ճնշումից հետո զնդակահարվել է դաշնակների կողմից:

*Հ. Օհանյան*


Ս. Ս. Մկրտչյան


Ք. Հ. Մկրտչյան

**ՄԿՐՏՈՒԹՅՈՒՆ**, քրիստոնեական եկեղեցու գլխավոր «խորհուրդ»: Եկեղեցին մտցրել է *հավատո հանգանակի* մեջ: Մ-յան ծիսական արարողությունը հետևյալն է. մկրտվող անձին օրհնող աղոթքներով երեք անգամ հոգևորականը թաթախում է եկեղեցու մկրտարանի ավազանում, օծում մյուռոնով: Ըստ եկեղեցու ուսմունքի, այդ ծեսով մկրտվողը քավում է «մեղքերը», հաղորդվում «աստվածային շնորհին», դառնում եկեղեցու անդամ: Ծիսական լվացումները (ի նշան բարոյական մաքրության և «մեղքերի» քավության) վկայված են մի շարք հին ժողովուրդների մոտ և ծագել են ջրի «մաքրագործող» մոգական ուժի նկատմամբ նախնադարյան մարդկանց հավատից: Ավետարանը Մ-յան ծեսը վերագրում է *Հովհաննես Մկրտչին*, որն իբր Հորդանան գետում մկրտել է Քրիստոսին: Քրիստոնեության տարբեր ուղղություններում Մ-յան ծեսերը զանազանվում են առանձին մանրուքներով:

**ՄԿՐՏՈՒՄՅԱՆ** Արմեն Կարապետի (ծն. 1914), հայ սովետական ինժեներ-շինարար: Տեխ. գիտ. թեկնածու (1954): Ավարտել է Մոսկվայի հիդրոմելիորատիվ ինստ-ը (1940): 1961-ին ամրանի ձգման (էլեկտրատաքացմամբ) նոր տեխնոլոգիայի մշակման և արտադրության մեջ ներդրման աշխատանքներին մասնակցելու համար արժանացել է լենինյան մրցանակի:

**ՄԿՐՏՈՒՄՅԱՆ** Ենոք Ալավերդու [26.5(7.6). 1896, գ. Քրդլան (այժմ՝ Ենոքավան, ՀՍՍՀ Իջևանի շրջանում)—4.6.1920, Դիլիջան], Անդրկովկասում ու Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար մղված պայքարի մասնակից: Կոմունիստական կուսակցության անդամ 1917-ից: Հեղափոխական պայքարի մեջ ներգրավվել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանում սովորելու տարիներից: 1917—19-ին հեղա-



Ե. Ա. Մկրտումյան



Ս. Մ. Մկրտումյան

փոխական աշխատանք է տարել Էրզրումի ռազմաճակատի զինվորների շրջանում, ապա՝ Վրաստանում: Աշխատակցել է Թիֆլիսի «Պայքար» և Բաքվի «Կոմունիստ» թերթերին: Ձերբակալվել է Վրաստանի մենշևիկյան իշխանության կողմից և արտաքսվել Հայաստան, որտեղ ստանձնել է Քրդլան գյուղի բոլշևիկյան կազմակերպության ղեկավարությունը: 1920-ի ապրիլին ընտրվել է ՌԿ(բ)Կ Դիլիջանի գավառային կազմակերպության կոմիտեի կազմում: 1920-ի մայիսին ձերբակալվել և նետվել է Դիլիջանի բանտը: Փախչելով բանտից Մ., որպես Ղազախ—Դիլիջանի ռազմահեղափոխական կոմիտեի անդամ, ղեկավար մասնակցություն է ունեցել Քարվանսարայում (այժմ՝ Իջևան) 1920-ի Մայիսյան ապստամբության նախապատրաստմանը: Գնդակահարվել է դաշնակցականների կողմից: Իջևանի շրջանի Քրդլան գյուղը վերանվանվել է *Ենոքավան* (1935):

Գրկ. Ճ ա ղ ա ր յ ա ն Ս. Ա., Ենոք Մկրտումյան (1896—1920), Ե., 1962:

*Լ. Առաքելյան*

**ՄԿՐՏՈՒՄՅԱՆ** (Մ կ ր տ ու մ ո վ) Սամսոն Մովսեսի [1910, գ. Բռնակոթ (այժմ՝ ՀՍՍՀ Սիսիանի շրջանում) —1943], Սովետական Միության հերոս (13.12.1942), ավիացիայի կապիտան: ՍՄԿԿ անդամ 1931-ից: Ավարտել է Ստալինգրադի օդաչուական դպրոցը (1935), Մոսկվայի զոնդի հրամանատարների դասընթացները (1943): Մասնակցել է սովետա-ֆիննական պատերազմին: Հայրենական մեծ պատերազմի ժամանակ, որպես էսկադրիլիայի հրամանատարի տեղակալ, ապա հրամանատար, գրոհային ավիագնդի հրամանատարի տեղակալ, մասնակցել է Կովկասի պաշտպանության, Ուկրաինայի և Բելոռուսիայի ազատագրման համար մարտերին: Հերոսի կոչման արժանացել է 1942-ի աշնանը՝ Օրջոնիկիձեի շրջանում օդային մարտերում ցուցաբերած խիզախության համար: Զոհվել է Գոմելի ազատագրման մարտերում:

*Ք. Գրիգորյան*

**ՄԿՐՏՈՒՄՈՎ** Էմանուել Բոգդանի (1.9. 1909, Թիֆլիս — 21.4.1971, Մոսկվա), հայ սովետական ինժեներ-գնդապետ: Տեխ. գիտ. թեկնածու (1947), դոցենտ (1948): ՍՄԿԿ անդամ 1941-ից: Ավարտել է Ն. Ե. Ժուկովսկու անվ. ռազմաօդային ինժեներական ակադեմիան (1939) և դասավանդել նույն տեղում: Մ. ՍՍՀՄ առաջին ավիամոդելիստներից էր: Եղել է «Կռիլյա ռոդինի» ամսագրի խմբագրության և Ավիամոդելային սպորտի ֆեդերացիայի անդամ: Պարգևատրվել է Լենինի, Կարմիր դրոշի, Կարմիր աստղի շքանշաններով:

**ՄԿՈՒՆԴ**, մ ե ծ գ ե ղ ա ր դ, մ ե ծ ն ի զ ա կ, տ ե գ, զենքի հնագույն տեսակ: Սկզբում պատրաստել են քարե, ապա՝ պղնձե, բրոնզե, սկսած ուրարտ. շրջանից՝ երկաթե շեղբերով, որոնք ամրացվել են փայտե կոթերին: Շատ տարածված է եղել միջին դարերում: Մ. կրող զինվորները կոչվել են մկնդավորներ:

*Ս. Հմայակյան*

**ՄՀԵՐ**, վիպական-առասպելական հերոս: Հանդես է գալիս *«Սասնա ծռեր»* ժող. վեպում՝ պապի և թոռի զույգ կերպարով, իբրև Սանասարի որդի Ջոջ (Մեծ) կամ Առյուծաձև Մ. և Դավթի որդի Պստիկ (Փոքր) Մ.: Նրանց անունով էլ կոչվում են «Սասնա ծռեր»-ի երկրորդ և չորրորդ վիպական ճյուղերը:

Ջոջ և Պստիկ Մ-ների կերպարները ձևավորվել են *Միհր* աստծո կերպարի հիման վրա, հետագայում ենթարկվել վիպական կերպափոխությունների, երկատվել պապի ու թոռան միջև: Մ. հայ բանահյուսության, գրականության, արվեստի մեջ ըմբոստ մաքառումների, ազգային ու սոցիալական փրկության երազանքը մարմնավորողի կերպար է:

Գրկ. տես *«Սասնա ծռեր»* հոդվածի գրականությունը:

*Ս. Հարությունյան*

**«ՄՀԵՐԻ ԴՈՒՌ»**, «Ա գ ռ ա վ ու ք ա ր», սրբազան քարաժայռ Վանա բերդի մոտ: Ըստ ավանդության, այդտեղ փակված է աշխարհի անարդարություններից խռոված *«Սասնա ծռեր»* դյուցազներգության վերջին հերոսը՝ Փոքր Մհերը: Մի զրույցի համաձայն՝ ամեն տարի, Համբարձման ու Վարդավառի գիշերը, երբ երկինքն ու երկիրը համբուրվում են, Մհերն իր հրեղեն նժույգով դուրս է գալիս, շրջում երկնքում և երկրում, բայց համոզվելով, որ դեռ «գետինը չի կարող դիմանալ իր ծանրությանը», նորից վերադառնում է իր տեղը: Ապագայում իբր Մհերը դուրս է գալու այնտեղից՝ ազատելու «հայու աշխարհը» չար ուժերից և հիմնելու երջանիկ թագավորություն: Ավանդության մեջ պահպանվել է *Միհր* աստծո երկրորդ գալստյան և աշխարհը չար ոգիների իշխանությունից ազատելու գաղափարը:

«Միհերի դուռ»-ը



**ՄՀՈՒԲ**, գյուղ Հայկական ՍՍՀ Աբովյանի շրջանում: Տես *Բալահովիտ*:

**ՄՂԱՄՈՒՃ** (Viscum), ճ ա զ ո մ, փոկածաղիկազգիների ընտանիքի կիսամակաբույծ մշտադալար թուփ: Աճում է ծառերի ճյուղերին: Տերևները հակադիր են կամ տերևափնջերով, նստադիր ամբողջական, հաստակեղև, ծաղիկները՝ միասեռ (բույսերը միատուն կամ երկտուն) մանր, կանաչավուն, դեղին կամ սպիտակավուն, մեծ մասամբ 3-ական՝ ցողունի խեչակներում (երկճեղքերում), հազվադեպ՝ միայնակ: Պտուղը՝ սպիտակ, դեղին, նարնջագույն կամ կարմիր, հաճախ միասերմ կեղծ հատապտուղ է: Սերմերը՝ առանց կեղևի, պատված են մածուցիկ, յուրձային պտղամսով: Հայտնի է մոտ 70 տեսակ, տարածված են Եվրոպայում, Աֆրիկայում, Ասիայում, ՍՍՀՄ-ում՝ 2 տեսակ. Մ. ճ ե ր մ ա կ (V. album)՝ եվրոպական մասի միջին և հվ. գոտում և Կովկասում, Մ. գ ու ն ա վ ո ր վ ա ծ (V. coloratum)՝ Հեռավոր Արևելքում: Կա ճերմակ Մ-ի 3 ենթատեսակ, մեկը մակաբուծվում է լայնասաղարթ (տանձենի, խնձորենի, բարդի, թխկի ևն), մյուսները՝ ասեղնատերև ծառերի (սոճի, եղևնի) վրա: Մ-ի պտուղներից ստանում են «թռչնի սոսինձ» (մանր թռչուններ որսալու համար): Ճերմակ Մ-ի մատղաշ տերևների թուրմը օգտագործվում է բուժման նպատակով՝ հիպերտոնիկ հիվանդության վաղ փուլերում:

ՀՍՍՀ-ում Մ. տարածված է Իջևանի, Մեղրու շրջանների անտառային գոտում, Հոկտեմբերյանի շրջանում, Երևանում:

**ՄՂԱՐԹ**, գյուղ Հայկական ՍՍՀ Թումանյանի շրջանում, Վիրահայոց լեռնաշղթայի Շեկաղբյուր լեռան հարավային լանջին, շրջկենտրոնից 23 *կմ* հարավ-արևմուտք: Անասնապահական սովետական տնտեսությունն զբաղվում է նաև հացահատիկի, կերային կուլտուրաների, կարտոֆիլի, ծխախոտի մշակությամբ: Ունի ութամյա դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կինո, կապի բաժանմունք, կենցաղսպասարկման տաղավար, մանկապարտեզ, բուժմանկաբարձական կետ: Գյուղում և շրջակայքում պահպանվել են խաչքարեր (XIII—XIV դդ.), մատուռների (XIV դ.) մնացորդներ, գյուղատեղի և XIX դ. գերեզմանոցներ:



Մղարթ

**ՄՂԵԲՐՈՎ** (Մ ղ ե բ ր յ ա ն) Ալեքսանդր Աբելի [12(14).3.1884, Թիֆլիս —5.10.1966, Լենինգրադ], սովետական թատերական գործիչ, դերասան և ռեժիսոր: Ծագումով՝

հայ: 1907-ին ավարտել է Ռապգոֆի դրամատիկական դասընթացները, նույն թվականին ընդունվել Մոսկվայի Գեղարվեստական (ՄԳԹ), ապա՝ Վ. Կոմիսարժևսկայայի թատրոն (1908—10): 1910—12-ին խաղացել է Եվրեինովի Հինավուրց թատրոնում: 1917-ին հիմնադրել և ղեկավարել է Բալթիական գործարանի բանվորական թատրոնը, 1918-ին կազմակերպել է «Պրոլետկուլտի գեղարվեստական թատերաբեմ»-ը (հետագայում՝ Բանվորական հերոսական հեղափոխական թատրոն): 1920—21-ին աշխատել է ՌՍՖՍՀ առաջին թատրոնում, 1922—24-ին, 1930—31-ին, 1939—56-ին եղել է Լենինգրադի Պուշկինի անվ. դրամատիկական թատրոնի դերասան: 1963-ից աշխատել է ժող. թատրոններում: Մ-ի լավագույն դերերից են՝ Ֆեոդոր (Ա. Տոլստոյի «Ֆեոդոր Իոհաննովիչ արքան»), Դունկան (Շեքսպիրի «Մակբեթ»), Նեսչաստլիվցև (Ա. Օստրովսկու «Անտառ»): Նկարահանվել է կինոյում: Ստեղծագործական սերտ կապեր է ունեցել Վ. Կոմիսարժևսկայայի, Պ. Օրլենևի, Վ. Մեյերխոլդի հետ: Վլ. Նեմիրովիչ-Դանչենկոն և Կ. Ստանիսլավսկին բարձր են գնահատել Մ-ի գործունեությունը: Մ. հեղինակ է «Կյանքս թատրոնում», հ. 1—2, 1929—32, գրքի:

*Ս. Փոթեքյան*

**ՄՂԻՉ**, *կոմպրեսոր*, որը ծառայում է միջուկային ներքին այրման շարժիչի գլան մատուցվող օդի նախնական սեղմման համար: Մ-ները լինում են կենտրոնախույս և ծավալային: Կենտրոնախույս Մ-ի առավելություններն են փոքր չափերն ու կշիռը, մեծ օ. գ. գ.: Ծավալային Մ. հուսալի է և հարմար, բայց ունի մեծ չափեր և աշխատանքի ժամանակ զգալի աղմուկ է առաջացնում: Մ-ները լայն տարածում են ստացել ավիացիայում և նպաստում են միջուկային շարժիչներով ինքնաթիռների «առաստաղի» բարձրացմանը:

**ՄՂՈՆ** [< հուն. μίλιον, < լատ. mille (passuum) — հազար (քայլ)], *երկարության միավոր*: Տարածված է միավորների ազգային ոչ մետրական համակարգերում և օգտագործվում է հիմնականում ծովային գործում: Մ-ի մեծությունը, որ հավասար է միջօրեականի 1′ աղեղի երկարությանը, տարբեր երկրներում տարբեր է՝ կախված տեղանքի աշխարհագրական լայնությունից և տատանվում է 0,58 *կմ*-ից (Եգիպտոս) մինչև 11,2 *կմ* (հին չեխ. Մ.) սահմաններում: Մեծ Բրիտանիայում ծովային Մ.= = 1,853184 *կմ*, ցամաքային կանոնադրական Մ.= 1,609344 *կմ* (կիրառվում է նաև ԱՄՆ-ում): Աշխարհագրական Մ. (գերմ.) հավասար է հասարակածի 1/15°= = 7,4204 *կմ*: Հին հռոմ. Մ. (միլիարիում)= = 1,481 *կմ*: Հին և վաղ միջնադարյան հայկ., հռոմեական-փիլետերյան (փոքրասիական) և պարսկ. Մ.= 1,598 *կմ*: Ուշ միջնադարում հայ մատենագրության մեջ օգտագործված Մ. 1,852 *կմ* է: Արաբ. Մ.= 1,9176 *կմ*: Հին ռուս. Մ.= 7,4676 *կմ*: Ատրպատականում հիշատակվող Մ.= = 1479,5 *մ*:

ՍՍՀՄ-ում և բազմաթիվ երկրներում կիրառվում է միջազգային ծովային Մ., որն ըստ Միջազգային հիդրոգրաֆիական կոնֆերանսի (1929) որոշման, հավասար է 1,852 *կմ*՝ միջօրեականի 1′ աղեղի միջին երկարությանը:

*Գրկ.* Ա վ գ ե ր յ ա ն Հ., Բացատրութիւն չափուց և կշռոց նախնեաց..., Վնտ., 1821: Մ ա ն ա ն դ յ ա ն Հ., Կշիռները և չափերը հնագույն հայ աղբյուրներում, Ե., 1930: Ն ո ւ յ ն ի, Երատոսթենեսի ստադիոնը և պարսից ասպարեզը, Ե., 1934: Культура раннефеодальной Армении, Е., 1980, с. 326—355.

**ՄՂՏԱԳՈՒՆՈՒՄ**, ածխածնային կամ ցածրալեգիրված պողպատի և թուջի մակերևույթին երկաթի օքսիդների ($Fe_3O_4$ ևն) 1—10 *մկմ* հաստությամբ շերտի ստացում: Պատվածքի կառուցվածքը մանրաբյուրեղային է, մանրածակոտկեն: Մ. լինում է հ ի մ ն ա յ ի ն՝ օքսիդիչներով հիմնային լուծույթներում (135—150°C-ում), թ թ վ ա յ ի ն՝ թթվային լուծույթներում քիմ. կամ էլեկտրաքիմիական եղանակներով, ջ ե ր մ ա յ ի ն՝ բարձր ջերմաստիճաններում (մինչև 880°C) պողպատի օքսիդացում: Մ. կիրառվում է դեկորատիվ վերջնամշակման՝ մակերևույթներին շագանակագույն, մուգ կապույտ կամ սև գույն հաղորդելու համար (պահպանելով մետաղական փայլը): Մ. *օքսիդապատման* մասնակի դեպքն է:

*Գրկ.* В а й н е р Я. В., Д а с о я н М. А., Технология электрохимических покрытий, М.—Л., 1962.

**ՄՃԵԴԼՈՎ** Միհրան Պետրոսի (ծն. 18.10. 1928, Թիֆլիս), հայ սովետական փիլիսոփա: Փիլ. գիտ. դ-ր (1968), պրոֆեսոր (1972): ՍՄԿԿ անդամ 1952-ից: ՌՍՖՍՀ գիտության վաստ. գործիչ (1978): Ավարտել է Երևանի պետ համալսարանի միջազգային հարաբերությունների ֆակուլտետը (1953): 1960—76-ին եղել է ՍՄԿԿ ԿԿ օրգան «Կոմունիստ» («Коммунист») ամսագրի փիլ-յան և իրավունքի բաժնի վարիչ, Մոսկվայի համալսարանի պատմական մատերիալիզմի ամբիոնի պրոֆեսոր: 1976-ից ՍՄԿԿ ԿԿ-ին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստ-ի դիրեկտորի տեղակալն է: Մ. ԳԴՀ-ում լույս տեսնող Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի երկերի լիակատար ժողովածուի հրատարակության խմբագրական հանձնաժողովի անդամ է, ռուս. երկրորդ հրատարակության՝ առարկայական ցուցիչի (մաս 1—2, 1978) գլխավոր խմբագիր: Մ-ի գիտական ուսումնասիրությունները վերաբերում են պատմական մատերիալիզմի, գիտական աթեիզմի, գիտական կոմունիզմի պրոբլեմներին, արդի բուրժ. փիլ-յան և սոցիոլոգիայի քննադատությանը:

*Երկ.* Ապրելակերպը և գաղափարական պայքարը, Ե., 1977: Под сводами собора св. Петра, М., 1964; Эволюция современного католицизма, М., 1967; Католицизм, 2 изд., М., 1974; Социализм—становление нового типа цивилизации, М., 1980.

*Թ. Իսայան*

**ՄՃԿԱՆՑ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Վանի վիլայեթի Կարկառ գավառում: 1909-ին ուներ 15 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը 1915-ի հուլիսին, ռուս. զորքերի նահանջի ժամանակ, գաղթել և բնակություն են հաստատել Արևելյան Հայաստանում:

**ՄՅԱՈՆԵՐ**, ժողովուրդ: Ապրում են հիմնականում Հարավային Չինաստանում, մասամբ՝ Հարավ-Արևելյան Ասիայի երկրներում (ՎԱՀ, Լաոս, Թաիլանդ, Բիրմա): Ընդհանուր թիվը՝ մոտ 4 մլն (1981): Խոսում են մյաո-յաո խմբի լեզվով: Կրոնը շամանականությունն է: Զբաղվում են հիմնականում հողագործությամբ, բուծում լծկան անասուններ (գոմեշներ): Հայտնի են իրենց երգերով ու պարերով, ոսկերչական արվեստով և ասեղնագործությամբ:

**ՄՅԱՍԿՈՎՍԿԻ** Նիկոլայ Յակովլևիչ [8(20). 4.1881, Նովոգեորգիևսկ (այժմ՝ Մոդլին, Լեհաստան)—8.8.1950, Մոսկվա], ռուս սովետական կոմպոզիտոր, մանկավարժ, երաժշտական քննադատ, հասարակական գործիչ: ՍՍՀՄ ժող. արտիստ (1946): Արվեստագիտության դ-ր (1940): 1902-ին ավարտել է Ռազմաինժեներական ուսումնարանը, 1911-ին՝ Պետերբուրգի կոնսերվատորիան (դասատուներ՝ Ա. Կ. Լյադով, Ն. Ա. Ռիմսկի-Կորսակով, Յա. Վիտոլ):

Ն. Յա. Մյասկովսկի

Գրախոսականներով հանդես է եկել երաժշտական ամսագրերում («Մուզիկա», «Մուզիկալնայա կուլտուրա», «Սովրեմեննայա մուզիկա» ևն): Մ. մեծ գործունեություն է ծավալել սովետական երաժշտական մշակույթի տարբեր բնագավառներում. եղել է Պետական երաժշտական հրատարակչության հիմնադիրներից մեկը, ՌՍՖՍՀ լուսժողկոմատի երաժշտական բաժնի վարիչի տեղակալ, 1921-ից՝ Մոսկվայի կոնսերվատորիայի ստեղծագործական դասարանի պրոֆեսոր: Մ-ի աշակերտներից են Ա. Խաչատրյանը, Գ. Եղիազարյանը: Մ-ի ստեղծագործական ժառանգությունը բազմաժանր է՝ 27 սիմֆոնիա, սիմֆոնիկ պոեմներ և նախերգանքներ, 2 կոնցերտ (ջութակի, թավջութակի), 13 լարային կվարտետ, սոնատներ (ջութակի, թավջութակի, դաշնամուրի), ռոմանսներ, խմբերգեր ևն: Մ. մեր ժամանակի խոշորագույն սիմֆոնիստներից է: Լավագույն սիմֆոնիաներից են՝ 5-րդ (1918), 6-րդ (1923), 16-րդ (1936), 21-րդ (1940), 27-րդ (1950): ՍՍՀՄ պետ. մրցանակներ (1941, 1946, 1950, 1951):

*Գրկ.* Л и в а н о в а Т., Н. Я. Мясковский. Творческий путь, М., 1953; А с а ф ь е в Б. В., Избранные труды, т. 5, М., 1957; Н. Я. Мясковский, собр. материалов, т. 1, Статьи, очерки, воспоминания, М., 1964; И к о н н и к о в А., Художник наших дней. Н. Я. Мясковский, М., 1966.

*Ս. Բարսամյան*

**ՄՅԱՍՆԻԿՅԱՆ** (Մ յ ա ս ն ի կ ո վ) Ալեքսանդր Ֆեոդորի (Աստվածատուրի), հեղափոխական և գրական ծածկանունները՝ Ա լ. Մ ա ր տ ու ն ի, Ա լ յ ո շ ա, Բ ո լ շ ի կ, Կ ո մ ու ն ի ս տ [28.1(9.2).1886, Նոր Նախիջևան (այժմ՝ Դոնի Ռոստովի Պրոլետարական շրջան)—22.3.1925, Թիֆ-



Ա. Ֆ. Մյասնիկյան

[իս], սովետական պետական, կուսակցական և ռազմական գործիչ, գրականագետ: Կոմունիստական կուսակցության անդամ 1906-ից: Ավարտել է Մոսկվայի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը (1911): Հեղափոխական գաղափարներով տարվել է դեռևս աշակերտական տարիներին՝ Նոր Նախիջևանում ընդգրկվելով ընդհատակյա հեղափոխական խմբակում (1901): Մոսկվայի Լազարյան ճեմարանում սովորելիս ներգրավվել է ուսանողական հեղափոխական շարժման մեջ, մասնակցել 1905-ի հոկտեմբերյան համառուսաստանյան գործադուլին և Դեկտեմբերյան զինված ապստամբությանը Մոսկվայում: 1906-ին ձերբակալվել է և արտաքսվել: Վերադառնալով ծննդավայր՝ Մ. հեղափոխական-պրոպագանդիստական աշխատանք է ծավալել հայ աշխատավորների շրջանում: 1907—1908-ին ընդհատակյա և լեգալ կուսակցական աշխատանք է տարել Բաքվում: Համագործակցել է Ս. Շահումյանի, Բ. Կնունյանցի, Ա. Ջափարիձեի և ուրիշների հետ: Մոսկվայի համալսարանում ուսանելիս Մ. ուսանողական ընդհատակյա կազմակերպության ղեկավարներից էր: Առաջին համաշխարհային պատերազմի սկզբից զորակոչվել է բանակ: Արևմտյան ռազմաճակատում, իր շուրջը հավաքելով սոցիալ-դեմոկրատներին, ստեղծել է ընդհատակյա բոլշևիկյան կազմակերպություն, որը հեղափոխական աշխատանք էր տանում զինվորների շրջանում: 1917-ի Փետրվարյան հեղափոխությունից հետո ընտրվել է ռազմաճակատի զինվորական կոմիտեի անդամ և Մ. Ֆրունզեի հետ ղեկավարել այդ կոմիտեի բոլշևիկյան ֆրակցիան: Մայիսին սահմանազատվելով մենշևիկներից՝ ֆրակցիան ստեղծել է բոլշևիկների ինքնուրույն կազմակերպություն: Կոմիտեի նախագահ է ընտրվել Մ.: 1917-ի հուլիսին Մ-ի ջանքերով ստեղծվել է այդ կոմիտեի օրգան «Звезда» թերթը: Որպես Արևմտյան ռազմաճակատի և Բելոռուսիայի բոլշևիկների պատգամավոր, մասնակցել է ՌՍԴԲԿ VI համագումարին, որտեղ պաշտպանել է սոցիալիստական հեղափոխության նախապատրաստման և անցկացման լենինյան ստրատեգիան: 1917-ի սեպտեմբերին ընտրվել է ՌՍԴԲԿ Հյուսիս-Արևմտյան մարզային կոմիտեի (հետագայում՝ Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմ) նախագահ: Հոկտեմբերյան զինված ապստամբության հաղթանակից հետո ընտրվել է Մինսկում ստեղծված Հյուսիս-Արևմտյան ռազմաճակատի ռազմհեղկոմի նախագահ: Արևմտյան ռազմաճակատի զինվորների II համագումարում նա ընտրվել է Արևմտյան ռազմաճակատի գլխավոր հրամանատար: Միաժամանակ նշանակվել է նորաստեղծ կարմիր բանակի ռազմակայանի ռազմահեղափոխական կոմիտեի նախագահ և գերագույն գլխավոր հրամանատարի տեղակալ: Որոշ ժամանակ կատարել է գերագույն գլխավոր հրամանատարի պարտականությունները: 1918-ի գարնանը ղեկավարել է Պոլոցկիի ռազմաճակատի գործողությունները ընդդեմ սպիտակ չեխերի: 1919-ի սկզբին ընտրվել է Բելոռուսիայի Կենտգործկոմի և կոմկուսի կենտրոնական բյուրոյի նախագահ: 1919-ի մարտին տեղափոխվել է Մոսկվա և ընտրվել ՌԿ(բ)Կ Մոսկվայի քաղաքային ու նահանգային կոմիտեների առաջին քարտուղար: Անտանտի 3-րդ արշավանքի ժամանակ (1920-ի ամառ) նշանակվել է Արևմտյան ռազմաճակատի քաղվարչության պետ և Տուխաչևսկու հետ ապահովել մարտական-քաղաքական առաջադրանքների կատարումը: 1921-ի հունվարին ՌԿ(բ)Կ ԿԿ-ի որոշմամբ Մ. ուղարկվել է Հայաստան և նշանակվել սովետական նորաստեղծ կառավարության նախագահ և ռազմ. գործերի ժողկոմ: Իր հետ Կովկաս է բերել Վ. Ի. Լենինի նամակը՝ «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կոմունիստ ընկերներին»: Անդրֆեդերացիայի կազմակերպումից հետո (1922-ի մարտ) Մ. Ֆեդերացիայի գործադիր կոմիտեի նախագահներից էր և ապա՝ կուսակցության Անդրկովկասյան երկրային կոմիտեի առաջին քարտուղարը: Կուսակցական, պետ. և ռազմ. գործունեությանը զուգահեռ Մ. տաղանդավոր հրապարակախոս, գրականագետ և խմբագիր էր: Խմբագրել է շուրջ տասը անուն թերթ ու հանդես: Հեղինակ է մի շարք աշխատությունների, որոնք նվիրված են մարքսիզմ-լենինիզմի տեսության, հեղափոխական շարժումների պատմության և հայ գրականության հարցերին: Նրա «Միքայել Նալբանդյան» հոդվածը (1910) առաջին մարքսիստական ուսումնասիրությունն է հայ հեղափոխական-դեմոկրատի մասին: Հրատարակել է հոդվածներ՝ նվիրված հայ պոեզիայի դասականներ Հ. Հովհաննիսյանին, Ա. Ծատուրյանին և Հ. Թումանյանին: Հետևողականորեն պաշտպանելով գրականության կուսակցականության լենինյան սկզբունքները՝ Մ. սուր քննադատության է ենթարկել ապոլիտիզմը և անգաղափարայնությունը, «արվեստը արվեստի համար» բուրժ. տեսությունը («Բարերարները և նրա սպասավորները», 1912, «Արթնացումը», 1914 և այլ հոդվածներում): Եղել է կուսակցության VI—XIII համագումարների պատգամավոր, XII—XIII համագումարներում ընտրվել է ՌԿ(բ)Կ ԿԿ անդամության թեկնածու: ՍՍՀՄ Կենտգործկոմի նախագահության, ՍՍՀՄ ռազմահեղափոխական խորհրդի անդամ էր: Զոհվել է Թիֆլիսի օդանավակայանում՝ ինքնաթիռային աղետի հետևանքով:

*Երկ.* Ընտ. երկ., Ե., 1957: Ալեքսանդր Մյասնիկյան: 1886—1925, Բիբլիոգրաֆիա, Ե., 1956: Избр. произв., [пер. с арм.], Е., 1965.

*Գրկ.* Մ ն ա ց ա կ ա ն յ ա ն Ա. Ն., Ալեքսանդր Մյասնիկյան, Ե., 1955: Ա վ ա գ յ ա ն Ս. Դ., Ալեքսանդր Մյասնիկյանը հրապարակախոս, Ե., 1964: Ո ս կ ե ր չ յ ա ն Ա. Կ., Ալեքսանդր Մյասնիկյանը և գրական հարցերը, Ե., 1974: Ղ ա ր ի բ ջ ա ն յ ա ն Գ. Բ., Ալեքսանդր Մյասնիկյան, Ե., 1976: С а л и н Л., Жизнь, отданная народу, в кн.: Солдаты партии, [М.], 1971.

*Ա. Մնացականյան*

**ՄՅԱՍՆԻԿՅԱՆ**, հայաբնակ գյուղ Վրացական ՍՍՀ Ախալքալաքի շրջանում, շրջկենտրոնից 23 *կմ* հարավ-արևմուտք: Միավորված է Սուլդայի սովետական տնտեսության հետ: Ունի տարրական դպրոց:

**ՄՅԱՍՆԻԿՅԱՆԻ ԱՆՎԱՆ ՍՈՎԽՈԶԻՆ ԿԻՑ ԱՎԱՆ**, Հայկական ՍՍՀ Հոկտեմբերյանի շրջանում, շրջկենտրոնից 11 *կմ* հյուսիս-արևմուտք, Երևան—Թբիլիսի երկաթուղու մոտ: Խաղողագործական սովետական տնտեսությունն զբաղվում է



Մյասնիկյանի անվան սովխոզին կից ավան

պտղաբուծությամբ և անասնապահությամբ: Ունի միջնակարգ դպրոց, կուլտուրայի տուն, գրադարան, կինո, կապի բաժանմունք, կենցաղսպասարկման տաղավար, մսուր-մանկապարտեզ, բուժկայան: Հիմնադրել են Անիի, Ախուրյանի և Թալինի շրջաններից եկածները՝ 1954-ին:

**ՄՅՈԲԻՈՒՍ** (Möbius) Ավգուստ Ֆերդինանդ (1790—1868), գերմանացի երկրաչափ: 1816-ից՝ Լայպցիգի համալսարանի պրոֆեսոր, 1844-ից՝ Լայպցիգի աստղադիտարանի դիրեկտոր: Մ. պրոյեկտիվ երկրաչափությունում առաջինն է մուծել կոորդինատների համակարգ և հետազոտման անալիտիկ մեթոդներ, կորերն ու մակերևույթները դասակարգել է նոր մոտեցմամբ, սահմանել է պրոյեկտիվ ձևափոխության ընդհանուր հասկացություն: Ապացուցել է *միակողմանի մակերևույթների* գոյությունը (տես *Մյոբիուսի թերթ*):

**ՄՅՈԲԻՈՒՍԻ ԹԵՐԹ**, մակերևույթ, որը ստացվում է $ABB'A'$ ուղղանկյան $AB$ և $A'B'$ հակադիր կողմերը իրար այնպես կպցնելուց, որ $A$-ն համընկնի $B'$-ի, $A'$-ը՝ $B$-ի հետ: Մ. թ. այսպես կոչված միակողմանի մակերևույթ է, եթե շարժվենք Մ. թ-ի վրայով (առանց հատելու եզրագիծը) և վերադառնանք նույն կետը, ապա ի տարբերություն երկկողմանի մակերևույթների (գունդ, գլան), կգտնվենք սկզբնական դիրքի նկատմամբ շրջված վիճակում: Եթե Մ. թ. կտրենք նրա միջին գծով, ապա այն ոչ թե կբաժանվի երկու անջատ մասերի, այլ կդառնա երկու անգամ ծռված գլանային օղակ:

**ՄՅՈՍԲԱՈՒԵՐ** (Mössbauer) Ռուդոլֆ Լյուդվիգ (ծն. 1929), գերմանացի ֆիզիկոս (ԳՖՀ): Ավարտել է Մյունխենի բարձրագույն տեխ. ուսումնարանը (1955): 1955—1957-ին եղել է Մաքս Պլանկի ինստ-ի (Հայդելբերգ) դոկտորանտ, 1957—59-ին՝ Մյունխենի բարձրագույն տեխ. ուսում-

նարանի աշխատակից: 1960-ից աշխատել է Կալիֆոռնիայի տեխնոլոգիական ինստ-ում (1961-ից՝ պրոֆեսոր): 1965-ից՝ Մյունխենի տեխ. բարձրագույն դպրոցի պրոֆեսոր: Աշխատանքները վերաբերում են միջուկային ֆիզիկային և պինդ մարմնի ֆիզիկային: 1958-ին հայտնագործել է պինդ մարմնի ատոմային միջուկներում γ-քվանտների ռեզոնանսային կլանման երևույթը, որը չի ուղեկցվում մարմնի ներքին էներգիայի փոփոխությամբ (տես *Մյոսբաուերի էֆեկտ*): Նոբելյան մրցանակ (1961):

*Երկ.* Резонансное ядерное поглощение γ-квантов в твердых телах без отдачи, «Успехи физических наук», 1960, т. 72, в. 4, с. 658—71.

**ՄՅՈՍԲԱՈՒԵՐԻ ԷՖԵԿՏ**, միջուկային գամմա-ռեզոնանս (ՄԳՌ), γ-քվանտների ռեզոնանսային կլանումը ատոմային միջուկներով. դիտվում է, երբ γ-ճառագայթման աղբյուրն ու կլանիչը պինդ մարմիններ են, իսկ γ-քվանտների էներգիան մեծ չէ (~150 *կէՎ*): Ըստ որում այս էֆեկտի դեպքում միջուկի պատասխան ռեակցիայի համար գործնականում էներգիա չի ծախսվում: Հայտնաբերել է Ռ. *Մյոսբաուերը*, 1958-ին: Նյութը γ-քվանտներով ճառագայթելիս, փոխազդեցության սովորական պրոցեսների հետ մեկտեղ հնարավոր է γ-քվանտների ռեզոնանսային կլանումը միջուկներով, որի դեպքում γ-քվանտն անհետանում է, իսկ միջուկը գրգռվում, այսինքն՝ անցնում է ավելի մեծ ներքին էներգիայով վիճակի: Ռեզոնանսային կլանման անհրաժեշտ պայմանն այն է, որ միջուկի գրգռման համար քվանտի ծախսած էներգիան ճշտիվ հավասար լինի քվանտային անցման էներգիային, այսինքն՝ միջուկի գրգռված և հիմնական վիճակների ներքին էներգիաների տարբերությանը: Մ. է. պայմանավորված է պինդ մարմնում ատոմների շարժման կոլեկտիվ բնույթով: Պինդ մարմիններում ատոմների ուժեղ փոխազդեցության շնորհիվ միջուկների պատասխան ռեակցիայի էներգիան հաղորդվում է ոչ թե առանձին միջուկի, այլ փոխակերպվում է բյուրեղային ցանցի տատանումների էներգիայի. այլ կերպ ասած՝ պատասխան ռեակցիան հանգեցնում է *ֆոնոնների* առաջացման: Մ. է-ի հավանականությունը մեծապես կախված է նաև ջերմաստիճանից: Մ. է-ի դեպքում դիտվում են γ-ճառագայթների առաքման և կլանման շատ նեղ սպեկտրային գծեր (γ-քվանտների էներգիայի միջակայքերը $10^{-5}$—$10^{-10}$*էՎ* կարգի են): Մ. է. կիրառվում է ֆիզիկայում (պինդ մարմինների կառուցվածքի հետազոտում), կենսաբանության (հեմոգլոբինի էլեկտրոնային կառուցվածքի ուսումնասիրում ևն), երկրբ. հետախուզության (հանքերի էքսպրես-վերլուծություն) մեջ, քիմիայում (քիմ. վերլուծություն):

*Գրկ.* Фрауэнфельдер Г., Эффект Мёссбауэра, пер. с англ., М., 1964; Вертхейм Г., Эффект Мёссбауэра, пер. с англ., М., 1966.

**ՄՅՈՒԶԵՏ**(<ֆրանս. musette <հին ֆրանս. muse — շվի), 1. պարկապզուկի տարատեսակ: XVII—XVIII դդ. տարածված է եղել Ֆրանսիայում, կիրառվել օպերային նվագախմբում: 2. Փողային գործիք՝ *հոբոյի* տարատեսակ (հոբոյ դը պաստոռ): 3. Ֆրանս. ժող. արագ պար՝ եռչափ չափով: Կատարվում է նույնանուն գործիքի նվագակցությամբ: XVIII դ. Մ. պալատական օպերա-բալետային դիվերտիսմենտի մասերից էր: Մ. հանդիպում է Գ. Ֆ. Հենդելի, Վ. Ա. Մոցարտի, Ա. Կ. Գլազունովի և այլոց ստեղծագործություններում:

**ՄՅՈՒԶԻԿԼ** (անգլ.— musical), երաժշտական-բեմական ստեղծագործություն՝ առավելապես կատակերգական բնույթի, ուր օգտագործվում են էստրադային և կենցաղային երաժշտության, օպերայի և օպերետի, խորեոգրաֆիայի արտահայտչամիջոցներ: Մ-ի բնորոշ գծերից է ընկալման համար ոչ բարդ գեղարվեստական միջոցներով դրամատուրգիական լուրջ խնդիրներ լուծելու միտումը: Սկզբնավորվել է ԱՄՆ-ում, XIX դ. վերջին, լայն տարածում գտել առաջին համաշխարհային պատերազմից հետո: Ճանաչում են ստացել Ջ. Գերշվինի «Քեզ եմ երգում» (1931), Ռ. Ռոջերսի «Օկլահոմա» (1943), «Երաժշտության հնչյուններ» (1959), Է. Բեռլինի «Վերցրու հրացանը, Էնն» (1946), Ֆ. Լոուի «Իմ չքնաղ լեդի» (1956), Լ. Բեռնստայնի «Վեստսայդյան պատմություն» (1957), 1960-ական թթ.՝ անգլ. կոմպոզիտոր Լ. Բարտի «Օլիվեր», «Մեգգի Մեյ» Մ-ները:

Հայ կոմպոզիտորներից Մ-ներ գրել է Ռ. Ամիրխանյանը՝ «Ատամնաբույժն արևելյան»(ըստ Հ. Պարոնյանի, 1976) և մանկական «Դինգ-դոնգ» (1979):

**ՄՅՈՒԶԻԿ-ՀՈԼԼ**, մյուզիք-հոլլ (<անգլ. music-hall— համերգային դահլիճ), էստրադային թատրոնի տեսակ: Մ-հ-ի ծրագիրը կազմված է կրկեսային, բալետային, երաժշտական համարներից, ինչպես և *սկետչներից* ու *վոդևիլներից*: Առաջին Մ-հ-երից մեկը կազմակերպվել է Լոնդոնի Վոքսհոլլ արվարձանում: ՍՍՀՄ-ում առաջին Մ-հ. ստեղծվել է 1923-ին, Մոսկվայի «Ակվարիում» այգում: Մ-հ-եր են բացվել նաև Լենինգրադում, Գորկիում, Դոնի Ռոստովում, Բաքվում և այլուր (գործել են մինչև 1930-ական թթ. կեսը): 1960-ական թթ. ստեղծվել են Մոսկվայի, Լենինգրադի և վրաց. շրջիկ Մ-հ-երը (տես նաև *Էստրադա*):

**ՄՅՈՒԼԼԵՐ** (Müller) Մաքս [Ֆրիդրիխ Մաքս (1823, Դեսաու —1900, Օքսֆորդ)], անգլիացի լեզվաբան, ընդհանուր լեզվաբանության մասնագետ, հնդկագետ, դիցաբան: Օքսֆորդի համալսարանի պրոֆեսոր (1854—76): Մ. լեզվաբանության մեջ հարել է նատուրալիստական ուղղությանը, սակայն, ի տարբերություն Ա. *Շլայխերի*, լեզուն համարել է ոչ թե ինքնուրույն օրգանիզմ, այլ միայն «օրգանիզմի անհրաժեշտ ֆունկցիա»: Ըստ Մ-ի, լեզվի զարգացումը «աճ» է, բնական զարգացում, իսկ լեզվաբանությունը՝ գիտություն բնության մասին: Դեռևս երիտքերականներից առաջ Մ. նշել է անգիր լեզուների ուսումնասիրման կարևորությունը և կենդանի բարբառների դերը լեզվի զարգացման գործում: Մ. թարգմանել է «Ռիգվեդան» (հ. 1—6, 1849—74), հրատարակել է «Արևելքի սուրբ գրքերը» (հ. 1—55, 1879—1924) մատենաշարը:

*Երկ.* History of the Ancient Sanskrit Literature, L., 1859; Сравнительная мифология, М., 1863; Наука о языке, в. 1—2, Воронеж, 1868—70.

**ՄՅՈՒԼԼԵՐ** (Müller) Յոհաննես Պետեր (1801—1858), գերմանացի բնագետ, ժամանակակից ֆիզիոլոգիայի, համեմատական անատոմիայի և սաղմնաբանության հիմնադիրներից: Բոննի (1830-ից) և Բեռլինի (1833-ից) համալսարանների պրոֆեսոր: Պետերբուրգի ԳԱ արտասահմանյան թղթակից անդամ (1832): Ավարտել է Բոննի համալսարանը (1822): Հիմնական աշխատանքները վերաբերում են կենտրոնական նյարդային համակարգի և զգացողության օրգանների ուսումնասիրմանը: Ըստ Մ-ի զգայությունը զգացողության օրգանների ներքին հատկությունների («առանձնահատուկ էներգիայի») արտահայտությունն է: Մ. «ֆիզիոլոգիական իդեալիզմի» հիմնադիրներից է, որը քննադատել է Վ. Ի. Լենինը իր «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» գրքում (Երկ. լիակտ. ժող., հ. 18, էջ 398): Մ. ուսումնասիրել է անձնոտների կառուցվածքը, երկկենցաղների և սողունների ավշային սրտերը, փշամորթների սաղմնային և ետսաղմնային զարգացումը, հայտնաբերել և նկարագրել է թարթիչավոր որդերի (Մյուլլերյան թրթուր) և նեմերտինների թրթուրային փուլը, ողնաշարավոր կենդանիների և մարդու սաղմի նախաերիկամները կոյանցքին միացնող խողովակը (Մյուլլերյան խողովակ): Հիմնադրել է (1834) «Archiv für Anatomie Physiologie und wissenshaftliche Medzin» ամսագիրը:

**ՄՅՈՒԼԼԵՐ** (Müller) Ֆրիդրիխ (5.3.1834, Եմնիկ, Բոհեմիա —25.5.1898, Վիեննա), ավստրիացի լեզվաբան, հայագետ: 1853—1857-ին սովորել է Վիեննայի և Գյոթինգենի համալսարաններում: Տիրապետել է հայերենին, հունարենին, սանսկրիտին: 1858-ին եղել է Վիեննայի համալսարանի, ապա՝ արքունական մատենադարանի դիրեկտոր, 1866-ից՝ Վիեննայի համալսարանի համեմատական լեզվաբանության և սանսկրիտի դասախոս, Կայսերական գիտությունների ակադեմիայի անդամ: 1860-ական թթ. Մ. հայագիտական հոդվածներով աշխատակցել է ակադեմիայի պատմափիլիսոփայական տեղեկագրին, Վիեննայի համալսարանի արևելագիտության ֆակուլտետի հանդեսին: Պատմաբանասիրական բնույթի գործերում անդրադարձել է Մեսրոպ Մաշտոցի գործունեությանը, հայկ. գրերի գյուտին, Կորյունի, Ղազար Փարպեցու, Ստեփանոս Տարոնեցու (Ասողիկ), Առաքել Դավրիժեցու, Վարդան Բարձրբերդցու, Մխիթար Գոշի գործերին, իսկ լեզվաբանական հոդվածներում, որոնք գերազանցապես ամփոփված են «Արմենիակա», («Armeniaca») հանդեսի էջերում, հետազոտել է նաև հայերենի խոնարհման ու հոլովման համակարգերի օրինաչափությունները, բառակազմությունը, հնչյունաբանությունը, կատարել բազմաթիվ ստուգաբանություններ: Մ-ի աչքի ընկնող աշխատություններից են «Ընդհանուր ազգագրություն»-ը (1879) և քառահատոր «Լեզվաբանության հիմունքները» (1876—1887): Մ. սխալմամբ հայերենը համարել է իրանական լեզու:



Ֆ. Մյուլլեր

*Գրկ.* Ա ղ ա յ ա ն Է. Բ., Հայ լեզվաբանության պատմություն, հ. 1, Ե., 1958:

*Խ. Կարաղեյյան*

**ՄՅՈՒԼՔԻԴԱՐԱ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Հադրութի շրջանում, շրջկենտրոնից 30 *կմ* հարավ-արևմուտք: Միավորված է Առաքյուլի կոլտնտեսության հետ: Ունի ութամյա դպրոց, ակումբ, գրադարան: Մ-ում է Ս. Աստվածածին եկեղեցին (XVIII դ.), շրջակայքում՝ մի շարք ավերակ գյուղատեղիներ, գերեզմանատներ, եկեղեցիների ավերակներ (IX—XVII դդ.) և խաչքարեր (XIII դ.):

**ՄՅՈՒՀԵՆՏԻՍՅԱՆ** Հովհաննես Գևորգի [21.2(4.3).1810, Կ. Պոլիս —17(29).11. 1891, Կ. Պոլիս], հայ տպարանատեր-հրատարակիչ, գրաձուլիչ, փորագրող, ոսկերիչ, հայկական նոր տպատառերի ստեղծող: Չափագետ և տոմարագետ Գևորգ Մյուհենտիսյանի որդին: Ավարտել է Սկյուտարի վարժարանը: Աշակերտել է Հ. *Լիմոնճյանին*, նրա ղեկավարությամբ ուսումնասիրել արլ. և հայ երաժշտության տեսությունը, տիրապետել *նոր հայկական ձայնագրությանը*: Հայ երաժշտությանը Մ-ի մատուցած նշանակալից ծառայությունը Լիմոնճյանի նոտային համակարգի նշանների տպագրական ձևերի ստեղծումն է և կաղապարների ձուլումը: Արիստակես *Հովհաննիսյանի* հետ պաշտպանել է այդ նոտագրությունը, տարածել և պրոպագանդել այն: Տիրապետել է ոսկերչական արհեստին: 1839-ից եղել է Սկյուտարի Ս. Երուսաղեմի անվ. նորաբաց ճեմարանի տպարանապետը, 1844—45-ին հիմնել է սեփական տպարան, ապա՝ գրաձուլարան: Նրա ստեղծած նուրբ ու գեղեցիկ տպատառերը ժամանակին օգտագործվել են ոչ միայն Կ. Պոլսի, այլև Թիֆլիսի և հայաշատ այլ վայրերի տպարաններում: Իր պատրաստած հատուկ գործիքներով դյուրացրել է տառերի ձուլումն ու գրաշարությունը: Կ. Պոլսի երեք թաղամասերում հիմնած տպարաններում հրատարակել է ավելի քան 200 անուն գիրք, ինչպես նաև «Հայաստան», «Բուրաստան», «Մասիս», «Նոյան աղավնի», «Աստղիկ արևելյան», «Կիլիկիա», «Զեփյուռ հայրենյաց», «Ժամանակ» և այլ պարբերականներ: Մեծ վաստակ ունի նաև թուրք. տպագրության զարգացման գործում, որի համար անվանվել է «թուրքական Գուտենբերգ» և արժանացել կառավարական պարգևների: 1847-ին հրատարակել է «Հայտարարություն վասն նորակերտ տառից» երկը, ուր շարադրված են նրա հայացքները տպագրության արվեստի, տպատառերի և իր գործունեության սկզբնական շրջանի մասին:

*Գրկ.* Թ ե ո դ ի կ, Տիպ ու տառ, ԿՊ, 1912, էջ 73—80: Հ ի ս ա ր յ ա ն Ա., Պատմություն հայ ձայնագրության և կենսագրությունք երաժիշտ ազգայնոց. 1768—1909, ԿՊ, 1914, գլուխ Բ:

*Ռ. Աթայան, Հ. Դավթյան*

**«ՄՅՈՒՆԱՍԻՐ ԷՐՃԻԱՍ»** («Շեփոր այգաբացի»), երկօրյա, այնուհետև շաբաթական հայատառ թուրքերեն թերթ: Լույս է տեսել 1858—62-ին, Կ. Պոլսում: Խմբագիր՝ Կ. Փանոսյան: Ունեցել է շեշտված դեմոկրատական ուղղություն, պաշտպանել Մ. Նալբանդյանի գաղափարները: Պայքարել է հայ հետադիմական հոսանքների և թուրք. իշխանությունների հակահայկական քաղաքականության, հայ ժողովրդի միասնությունը ջլատող միսիոներական կազմակերպությունների և հայ կղերի դեմ: Բազմիցս հետապնդվել և վերջնականապես արգելվել է Զեյթունի դեպքերի՝ իր մեկնաբանությունների պատճառով:

*Գ. Ստեփանյան*

**ՄՅՈՒՆԽԵՆ** (München), քաղաք Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության հարավում, Իզար գետի ափին: 1,32 մլն բն. (1979): Բավարիա երկրի վարչական, ԳՖՀ տնտ. ու մշակութային կենտրոնն է, երկաթուղային, ավտոճանապարհների և օդային հաղորդակցության հանգույցը: Ետպատերազմյան տարիներին արագ զարգացան էլեկտրատեխնիկան, էլեկտրոնիկան, սարքաշինությունը, ընդհանուր և տրանսպորտային մեքենաշինությունը, թղթի և պոլիգրաֆ, կարի և տեքստիլ, սննդհամի (այդ թվում՝ գարեջրագործություն) արդյունաբերության ճյուղերը: Քիմ. արդյունաբերության առաջատար ճյուղերն են դեղագործությունը, ռետինի, կինոֆոտոժապավենների, արհեստական նյութերի արտադրությունը: Չնայած բազմաթիվ արհեստագործական և միջին արդ. ձեռնարկությունների առկայությանը արդյունաբերության առաջատար դերը պատկանում է «Սիմենս» (էլեկտրատեխնիկա և էլեկտրոնիկա), «Խանիել» (ընդհանուր և ծանր մեքենաշինություն), «Կվանդտ» (ավտոշինություն) և այլ խոշոր կոնցեռններին: Մ. ԳՖՀ առևտրի, բանկային ու ապահովագրական գործի խոշոր կենտրոններից է: Մ-ում պարբերաբար անցկացվում են միջազգային տոնավաճառներ: Ունի համալսարաններ, Բավարական կերպարվեստի ակադեմիա, երաժշտական բարձրագույն դպրոց, թանգարաններ, պատկերասրահներ, թատրոններ:

XIII դարից մինչև 1871-ը եղել է Բավարիայի մայրաքաղաքը: XVI դարից Գերմանիայի մշակութային նշանակալի կենտրոններից է: Երեսնամյա պատերազմի ժամանակ (1618—48) քաղաքը գրավել են շվեդ., 1705-ին՝ ավստ. զորքերը՝ 1701—1714-ի Իսպանական ժառանգության համար պատերազմում: 1871-ին, երբ ստեղծվեց Գերմանական կայսրություն, մտել է նրա կազմի մեջ (Բավարիայի հետ): 1900—1902-ին Մ-ում ապրել է Վ. Ի. Լենինը (ղեկավարել է «Իսկրա»-ի հրատարակումը): 1919 թվականին Մ-ում հռչակվել է *Բավարական Սովետական Հանրապետությունը*: 1923-ին քաղաքը դարձել է ֆաշիստների (Հիտլերի, Լյուդենդորֆի գլխավորությամբ) կենտրոն: Մինչև 1933-ը Մ-ում էր գտնվում նացիստական կուսակցության շտաբ-կայանը: Գերմանիայում ֆաշիստական դիկտատուրայի հաստատումից (1933) հետո դարձել է ֆաշիստական հետադիմության կենտրոններից մեկը: Այստեղ է ստորագրվել Չեխոսլովակիայի անդամահատման համաձայնագիրը (տես *Մյունխենի համաձայնագիր 1938*): Երկրորդ համաշխարհային պատերազմից (1939—45) հետո Մ. գտնվել է Ամերիկյան օկուպացիոն գոտում: Մ-ում պահպանված ճարտ. հուշարձաններից են Ֆրաուենկիրխե (1466—92), Սանկտ-Միխայել-կիրխե (1583—97), Տեատիներկիրխե (1663—1767) եկեղեցիները, Հին ռատուշան (1470), բավարական հերցոգների նստավայրի շինությունները (XVI—XIX դդ.), Նիմֆենբուրգ պալատը (1663—1728), ճարտ. Լ. Ֆոն Կլենցեի կլասիցիզմի ոճով կառույցները՝ Գլիպտոտեկա (1816—30), Հին պինակոտեկա (1826—36), Պրոպիլեյներ (1846—60), Նոր ռատուշան (1867—1908), Գերմանական թանգարանը (1903—25), Արվեստի տունը (1933—37): 1968—72-ին Մ-ում կառուցվել են XX ամառային օլիմպիական խաղերի մարզական շինությունների համալիրը, օլիմպիական ավանը:

Մ-ում կա ոչ մեծ հայ գաղութ (600 հոգի 1981-ին):

**ՄՅՈՒՆԽԵՆԻ ՀԱՄԱՁԱՅՆԱԳԻՐ 1938**, Չեխոսլովակիայի անդամահատման վերաբերյալ համաձայնագիր. ստորագրել են սեպտեմբերի 29-ին, Մյունխենում՝ Մեծ Բրիտանիայի (Ն. Չեմբեռլեն), Ֆրանսիայի (Է. Դալադիե), ֆաշիստական Գերմանիայի (Ա. Հիտլեր) և ֆաշիստական Իտալիայի (Բ. Մուսոլինի) ղեկավարները՝ Չեխոսլովակիայի վրա հիտլերյան Գերմանիայի ռազմ. ու քաղ. անսքող ճնշման պայմաններում: Մ. հ-ով նախատեսվում էր Չեխոսլովակիայի Սուդետյան մարզի հանձնումը Գերմանիային, ինչպես նաև Հունգարիայի և Լեհաստանի տերիտորիալ պահանջների բավարարումը ի հաշիվ Չեխոսլովակիայի: Մ. հ. 1939—45-ի երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրեին Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի կառավարությունների վարած «խաղաղեցման» քաղաքականության ցայտուն դրսևորումներից էր, որի նպատակն էր գործարքի մեջ մտնելով ագրեսիվ պետությունների (առաջին հերթին՝ ֆաշիստական Գերմանիայի) հետ, կանխել ֆաշիստական ագրեսիան Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի դեմ և այն ուղղել Արևելք՝ ընդդեմ Սովետական Միության: Այդ քաղաքականությունը խրախուսում էր ԱՄՆ: Բոլոր մեծ տերություններից միայն Սովետական Միությունը հանդես եկավ Չեխոսլովակիայի անկախության ու ազգային իրավունքների պաշտպանությամբ: Ֆաշիստական ագրեսիային հակահարված տալու նպատակով ՍՍՀՄ պատրաստ էր ռազմ. օգնություն ցույց տալ Չեխոսլովակիային՝ նույնիսկ առանց նրա դաշնակից Ֆրանսիայի մասնակցության (որը նախատեսված էր 1935-ի մայիսի 16-ի Սովետա-չեխոսլովակյան փոխօգնության պայմանագրով), պայմանով, որ ինքը՝ Չեխոսլովակիան, պաշտպանվեր և դիմեր ՍՍՀՄ-ին օգնության խնդրանքով: Սակայն Չեխոսլովակիայի բուրժ. կառավարությունը, ելնելով իր դասակարգային շահերից, չցանկացավ օգտվել ՍՍՀՄ-ի օգնությունից, գերադասեց զոհաբերել իր

երկրի ազգային շահերն ու անձնատուր լինել: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Մ. հ. չեղյալ համարվեց, որն իր վերջնական ձևակերպումը ստացավ ՉՍՍՀ-ի և ԳՖՀ-ի միջև 1973-ի դեկտեմբերին կնքված պայմանագրով:

Գրկ. История внешней политики СССР, ч. 1, 1917—1945 гг., М., 1966; Овсяный И. Д., Тайна, в которой война рождалась, М., 1971; Wheeler-Benett I., Munich, Prologue to tragedy, L., 1963.

**ՄՅՈՒՆՇ**, Մյունխ (Münch), Շարլ (26.9 1891, Ստրասբուրգ —6.11.1968, Ռիչմոնդ ԱՄՆ), ֆրանսիացի դիրիժոր և ջութակահար: Եղել է Ստրասբուրգի քաղաքային նվագախմբի (1919) և Գևանդհաուզի (1923) կոնցերտմայստեր: 1932-ից Փարիզում հանդես է եկել որպես դիրիժոր, 1935—1938-ին ղեկավարել է ֆիլհարմոնիայի, իսկ 1937—46-ին՝ Փարիզի կոնսերվատորիայի ընկերության նվագախմբերը: 1946-ից աշխատել է ԱՄՆ-ում, 1949—62-ին ղեկավարել Բոստոնի սիմֆոնիկ նվագախումբը: 1956-ին և 1965-ին հանդես է եկել ՍՍՀՄ-ում: 1967-ից գլխավորել է «Փարիզի նվագախումբ»-ը: Մ-ի երկացանկում առանձնահատուկ տեղ է գրավել ֆրանս. դասական և ժամանակակից երաժշտությունը (Ժ. Ֆ. Ռամո, Հ. Բեռլիոզ, Կ. Դեբյուսի, Մ. Ռավել, Ա. Հոնեգեր, Ա. Ռուսսել):

**ՄՅՈՒՆՍՏԵՐՅԱՆ ԿՈՄՈՒՆԱ** (1534—35), հեղափոխական ժողովրդական իշխանություն, որ հիմնել են *անաբապտիստները* Մյունստեր քաղաքում (Վեստֆալիա), քաղաքի սենյորի դեմ քաղաքացիների զինված պայքարի հաղթանակի հետևանքով: 1534-ի փետրվարին անաբապտիստները, հենվելով քաղաքի պլեբեյության վրա, քաղաքային մագիստրատում ձեռք բերեցին մեծամասնություն և գրավեցին իշխանությունը (գլխավորել են սկզբում Յան Մատիսը, իսկ նրա զոհվելուց հետո՝ Հովհան Լեյդենցին): Անաբապտիստները Մյունստերը հայտարարեցին «իսկական քրիստոնյաների» միասնական համայնք (կոմունա), անցկացվեցին մի շարք միջոցառումներ. եկեղեցա-վանքապատկան ունեցվածքն ու թանկարժեք մետաղները բռնագրավվեցին հօգուտ հանրության, դրամը վերացվեց, սպառման ապրանքները բաշխվեցին հավասարապես, բոլոր բնակիչները պարտավորվեցին աշխատել և մասնակցել պաշարված քաղաքի պաշտպանությանը: Մ. կ-ի միջոցառումներն ու ծրագիրը դուրս չեկան ֆեոդալիզմի տապալման և բուրժ. վերափոխությունների շրջանակներից: 14-ամսյա քաջարի պաշտպանությունից հետո Մ. կ. ընկավ:

**ՄՅՈՒՆՑԵՐ** (Müntzer, Münzer) Թոմաս (մոտ 1430—1525), գերմանացի հեղափոխական, *Ռեֆորմացիայի* ժողովրդական հոսանքի գաղափարախոս: Սկզբում եղել է Մ. *Լյութերի* կողմնակիցը, հետագայում հակադրվել է նրա ուսմունքին: Ակտիվորեն մասնակցել է 1520-ական թթ. Գերմանիայում ծավալված հեղափոխական իրադարձություններին: 1521-ին Չեխիայում հրատարակել է «Պրագայի մանիֆեստը», որտեղ շարադրել է իր հեղափոխական ուսմունքի հիմնադրույթները, ժողովրդին կոչ արել վերածնել և զարգացնել տաբորականների (Հուսյան շարժման հեղափոխական թևի ներկայացուցիչների) հեղափոխական ավանդույթները: Գյուղացիական պատերազմի (տես *Գյուղացիական պատերազմ Գերմանիայում 1524—25*) պարտությունից հետո գերվել և մահապատժի է ենթարկվել:

Մ-ի կրոնափիլիսոփայական պանթեիստական ուսմունքն ուղղված էր քրիստոնեության բոլոր հիմնական դոգմաների դեմ և մոտ էր աթեիզմին: Մ-ի *պանթեիզմը* սոցիալական ուղղվածություն ուներ. ամեն ինչ համաշխարհային ամբողջի մասն է, և անհատները հասարակական շահից տարբեր շահ չեն կարող ունենալ: Մ. Ռեֆորմացիան դիտում էր որպես հասարակության վերափոխում ընդհանուրի շահին համապատասխան և կոչ անում ժող. հեղափոխությամբ հաստատել «աստվածային թագավորություն», որտեղ չի լինի մասնավոր սեփականություն ու շահագործում: Մ-ի հասարակական-քաղաքական ծրագիրը Ֆ. Էնգելսը բնութագրել է որպես «կոմունիզմի կանխագուշակում երևակայությամբ»:

Գրկ. Էնգելս Ֆ., Գյուղացիական պատերազմը Գերմանիայում, Ե., 1940: Штекли А. Э., Томас Мюнцер, М., 1961.

**ՄՅՈՒՈՆՆԵՐ**, μ-մեզոններ, 1/2 սպինով, $2{,}2 \cdot 10^{-6}$ *վրկ* կյանքի տևողությամբ և էլեկտրոնի զանգվածից մոտ 207 անգամ մեծ զանգվածով անկայուն *տարրական մասնիկներ*: Գոյություն ունեն դրական ($\mu^+$) և բացասական ($\mu^-$) լիցքով Մ., որոնք կազմում են մասնիկ-հակամասնիկ զույգ: Մ. պատկանում են *լեպտոնների* դասին: Մ. 1936-ին հայտնաբերել են ամերիկացի ֆիզիկոսներ Կ. *Անդերսոնը* և Ս. Նեդերմեյերը (S. H. Neddermeyer, ծն. 1907) տիեզերական ճառագայթներում: Ծովի մակերևույթի մակարդակին տիեզերական ճառագայթման բոլոր մասնիկների հիմնական մասը (~80%) կազմում են Մ.: Տիեզերական ճառագայթներում և արագացուցիչներում Մ. առաջանում են հիմնականում π-մեզոնների (պիոնների) և K-մեզոնների (կաոնների) տրոհման հետևանքով. $\pi^+(K^+)\rightarrow\mu^++\nu_\mu$, $\pi^-(K^-)\rightarrow\mu^-+\bar{\nu}_\mu$ ($\nu_\mu$-ն և $\bar{\nu}_\mu$-ն մյուոնային նեյտրինոն և հականեյտրինոն են): Բարձր էներգիայի լիցքավորված մասնիկների ժամանակակից արագացուցիչներում ստանում են Մ-ի փնջեր՝ *վրկ*-ում $\sim 10^8$ մասնիկ ինտենսիվությամբ: Մ-ի թույլ փոխազդեցությունն առաջ է բերում տրոհում հետևյալ սխեմայով.

$$\mu^+\rightarrow e^++\nu_e+\bar{\nu}_\mu \quad (1)$$

$$\mu^-\rightarrow e^-+\bar{\nu}_e+\nu_\mu \quad (2)$$

($e^+$, $e^-$, $\nu_e$, $\bar{\nu}_e$-ն համապատասխանաբար պոզիտրոնը, էլեկտրոնը, էլեկտրոնային նեյտրինոն և հականեյտրինոն են): Այս տրոհումներն էլ հենց որոշում են Մ-ի կյանքի տևողությունը վակուումում: Թույլ փոխազդեցություններում զույգության խախտման հետևանքով (1) տրոհման ընթացքում պոզիտրոնները դուրս են թռչում առավելապես $\mu^+$-ի սպինի ուղղությամբ, իսկ էլեկտրոնները (2) տրոհման ընթացքում՝ $\mu^-$-ի սպինին հակառակ ուղղությամբ: Հետևաբար, ուսումնասիրելով էլեկտրոնների կամ պոզիտրոնների դուրս թռչելու ասիմետրիան տրոհման այդ պրոցեսներում, կարելի է որոշել $\mu^-$- և $\mu^+$-մեզոնների սպինների ուղղությունը: Փորձերից ստացված տվյալները ցույց են տալիս, որ մյուոնը բոլոր հայտնի փոխազդեցություններին մասնակցում է ճիշտ այնպես, ինչպես էլեկտրոնը, տարբերվելով վերջինից միայն զանգվածով: Այդ երևույթը կոչվում է μ-e ունիվերսալություն: Սակայն մյուոնը և էլեկտրոնը միմյանցից տարբերվում են լեպտոնային լիցքով, որը e-ի և $\nu_e$-ի համար հավասար է +1-ի, իսկ $\mu^-$-ի և $\nu_\mu$-ի համար՝ —1-ի (հակամասնիկների համար լեպտոնային լիցքը համապատասխանաբար ունի հակառակ նշան): Էլեկտրոնի և մյուոնի տարբերությունը լեպտոնային լիցքով բացատրելու օգտին է վկայում այն փաստը, որ այդ լիցքի պահպանման օրենքով արգելված $\mu^\pm\rightarrow e^\pm+\gamma$ և $\mu^\pm\rightarrow 2e^\pm+e^\mp$ տրոհումները փորձով չեն դիտվել: Բարձր էներգիայի Մ. նյութի մեջ արգելակվում են միայն էլեկտրոնների և միջուկների հետ կրած էլեկտրամագնիսական փոխազդեցության հաշվին, այդ պատճառով օժտված են մեծ թափանցունակությամբ: Իսկ դանդաղ Մ., կորցնելով իրենց էներգիան ատոմների իոնացման վրա, կարող են կանգ առնել նյութում: Ընդ որում շատ նյութերում $\mu^+$-ը իրեն է միացնում ատոմային էլեկտրոնը՝ կազմելով ջրածնի ատոմին համանման համակարգ՝ այսպես կոչված մյուոնիում: Ուսումնասիրելով նյութում $\mu^+$-ի ապաբևեռացման պրոցեսը արտաքին մագնիսական դաշտի առկայությամբ, հաջողվում է պարզել, թե ինչպիսի քիմ. ռեակցիաների մեջ է մտնում մյուոնիումը և որոշել այդ ռեակցիաների ընթացքի արագությունը: 70-ական թթ. առաջացել է դրական Մ-ի օգնությամբ քիմ. ռեակցիաների և նյութի հատկությունների հետազոտման նոր ուղղություն՝ այսպես կոչված մյուոնների քիմիան: Նյութի մեջ $\mu^-$-ը ավելի կարճ է ապրում. կանգ առնելով նյութում և ձգվելով դեպի դրական լիցքավորված միջուկը, այն կազմում է, այսպես կոչված, մյուոնային ատոմ կամ μ-մեզոատոմ (տես *Մեզոատոմ*): Այնուհետև միջուկը կլանում է $\mu^-$-մեզոնը. այդ պրոցեսը հանգում է $\mu^-+p\rightarrow n+\nu_\mu$ տարրական փոխազդեցության, որտեղ p-ն պրոտոնն է, n-ը՝ նեյտրոնը: Ծանր տարրերում արգելակվող μ-մեզոնի կյանքի տևողությունը որոշվում է հիմնականում միջուկներով նրա զավթման հավանականությամբ և 20—30 անգամ ավելի քիչ է՝ վակուումում ունեցած կյանքի տևողությունից:

Տես նաև *Մեզոններ*:

Գրկ. Вайсенберг А. О., Мю-мезон, М., 1964 (Современные проблемы физики).

*Գ. Գրիգորյան*

**ՄՅՈՒՌՈՆ**, մեռոն (<հուն. μύρον — անուշաբույր ձեթ), բուրավետ նյութ, որ կիրառվում է քրիստոնեական եկեղեցական ծեսերում (օծում, մկրտություն ևն): Պատրաստում են ձիթապտղի յուղից՝ խառնելով հոտավետ բույսերի ծաղիկներ ևն: Հայ եկեղեցում Մ. պատրաստվում է հատուկ արարողությամբ (մյուռոնօրհնեք),

այնուհետև բաժանվում է եկեղեցու բոլոր վիճակներին (թեմերին):

**ՄՅՈՒՍ ԻՇԱՅՐ**, գավառ Մեծ Հայքի Մոկք նահանգում: Տարածվում էր Վանա լճից հվ.: Տարածքով համապատասխանում է նոր ժամանակների Խիզանի շրջանին և Կարկառի մի մասին:

**ՄՅՈՒՍԵ** (Musset) Ալֆրեդ դը (1810—1857), ֆրանսիացի գրող: Ֆրանս. ակադեմիայի անդամ (1852): Մ-ի «Իսպանական և իտալական պատմություններ» (1830) բանաստեղծական առաջին ժողովածուն արժանացել է ընթերցողների ուշադրությանը: «Ներկայացում բազկաթոռի վրա» (1832) երկրորդ ժողովածուում փառաբանել է ազատությունը, ծաղրել բուրժ. պոլիտիկանությունը: Լայնորեն հայտնի է «Գիշերներ» (1835—37) քնարական պոեմների շարքը, որի թախծոտ մտորումները մենակության արգասիք են: Մ. ռոմանտիկ թատրոնի հիմնադիրներից է: Նրա «Լորենցացցո» (1834) պատմական դրաման, «Մարիանի կամակորությունը» (1833), «Սիրո հետ չեն կատակում» (1834), «Մոմակալը» (1835) սիրային-հոգեբանական պիեսները աչքի են ընկնում ռեալիստական կերպարներով, լարված գործողությամբ: «Դարիս զավակի խոստովանությունը» (1836, հայ. հրտ. «Դարուս մեկ զավակին խոստովանանքը», հ. 1—2, 1874—75) հոգեբանական վեպում արտացոլված է XIX դ. 20—30-ական թթ. ֆրանս. իրականությունը:

Հայ իրականության մեջ Մ. հայտնի է եղել դեռևս XIX դ.: Նրա գործերից հայերեն են թարգմանվել նաև «Մայիսյան գիշեր» (1897) և «Դեկտեմբերի մի գիշեր» (1900) պոեմները (տպագրվել են «Մուրճ» ամսագրում, թրգմ. Հ. Տեր-Գևորգյան), «Լուսին» (թրգմ. Հ. Թումանյան, 1910) բանաստեղծությունը ևն:

*Երկ.* Նոր քերթվածներ, Իզմիր, 1878: Տիցիենի որդին, Թավրիզ, 1905: Исповедь сына века. Новеллы, [ст. А. Андреса], Л., 1970.

**ՄՅՈՒՐԱՏ** (Murat) Յոախիմ (1767—1815), ֆրանսիական ռազմական գործիչ, Ֆրանսիայի մարշալ (1804), Նեապոլի թագավոր (1808): 1787-ից ծառայել է հեծելազորում, 1792-ից՝ սպա: Աչքի է ընկել ռոյալիստների(միապետականների) խռովության ճնշման ժամանակ (1795-ի հոկտ. 4) և դարձել է *Նապոլեոն I* Բոնապարտի համհարզը: Իտալ. արշավանքից (1796) հետո Մ-ին շնորհվել է բրիգադային, իսկ Եգիպտական արշավանքից (1799) հետո՝ դիվիզիոն գեներալի կոչում: Աջակցել է Նապոլեոնին իշխանության գրավման ժամանակ (տես *Բրյումերի տասնութ*): 1800-ին ամուսնացել է Նապոլեոնի քրոջ հետ: Մասնակցել է նապոլեոնյան բոլոր պատերազմներին, աչքի է ընկել հրամանատարական մեծ ընդունակություններով և բացառիկ խիզախությամբ: 1808-ին դաժանորեն ճնշել է Մադրիդի ապստամբությունը: Նեապոլի թագավոր դառնալով՝ աշխատել է վարել ինքնուրույն քաղաքականություն, որի հետևանքով (1810-ից) վատացել են հարաբերությունները Նապոլեոնի հետ: Ռուսաստանի դեմ 1812-ի արշավանքի ժամանակ գլխավորել է 28 հզ-անոց հեծյալ կորպուս, պարտվել է Տարուտինոյի մոտ: Նապոլեոնի փախուստից հետո ղեկավարել է նահանջող նապոլեոնյան բանակը: 1813-ին մասնակցել է Դրեզդենի և Լայպցիգի ճակատամարտերին, այնուհետև մեկնել Իտալիա: Զգտելով պահպանել գահը՝ 1814-ին (դավաճանելով Նապոլեոնին) գաղտնի դաշինք է կնքել Ավստրիայի և Մեծ Բրիտանիայի հետ: 1814—15-ի Վիեննայի կոնգրեսում աջակցություն չստանալով՝ Մ. «*Հարյուր օրվա*» ժամանակ անցել է Նապոլեոնի կողմը: Ջախջախվել է Իտալիայում և փախել Կորսիկա: Նպատակ ունենալով վերադարձնել իշխանությունը, ոչ մեծ ջոկատով ափ է իջել Կալաբրիայում (Իտալիա), սակայն բռնվել է և ավստ. ռազմ. դատարանի վճռով գնդակահարվել:

*Հ. Լիլոյան*

**ՄՅՈՒՐԻԴԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ**, մ ո ւ ր ի դ ա կ ա ն ո ւ թ յ ո ւ ն (արաբ.< մուրիդ—ձգտող, տենչացող), իսլամին նվիրվելու, *սուֆիզմի* կրոնամիստիկական ուսմունքին տիրապետելու «ձգտողների» կամ «տենչացողների» շարժում, որին բնորոշ էր սեփական «ես»-ից հրաժարվելով, «վարդապետողներին» (մուրշիդ) կամ «գիտակներին» (արիֆ) կուրորեն հնազանդվելը: Մյուրիդները *ղալավաթի* միջոցով նպաստել են Ասիայում և Աֆրիկայում մահմեդական կրոնի հետագա տարածմանը: XIX դ. 2-րդ կեսին ռուս. գրականության մեջ պայմանականորեն Մ. է անվանվել նաև Հյուսիսային Կովկասի ժողովուրդների 1820—60-ական թթ. ազգային-ազատագրական շարժումը: 1918—20-ի քաղաքացիական պատերազմի ժամանակ Մ. փորձել են օգտագործել Հյուսիսային Կովկասում սովետական իշխանության դեմ պայքարում:

*Գրկ.* Смирнов Н. А., Мюридизм на Кавказе, М., 1963. *Ե. Նալչաջյան*

**ՄՅՈՒՐԻՇԵՆ**, Միրուշեն, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտունու շրջանում, շրջկենտրոնից 25 *կմ* հյուսիս-արևմուտք: Կոլտնտեսությունն զբաղվում է հացահատիկային և կերային կուլտուրաների մշակությամբ, անասնապահությամբ, շերամապահությամբ: Ունի ութամյա դպրոց, գրադարան, ակումբ, կինո: Մ-ում և շրջակայքում պահպանվել են Ս. Աստվածածին եկեղեցին (XVIII դ.), մահարձաններ (XII—XV դդ.), գյուղատեղիներ:

**ՄՅՈՒՐԻՍԵՊ** Ալեքսեյ Ալեքսանդրովիչ (1902—1970), սովետական պետական և կուսակցական գործիչ: ՍՄԿԿ անդամ 1926-ից: 1924—26-ին ծառայել է կարմիր բանակում: Այնուհետև կատարել է սովետական և արհմիութենական աշխատանքներ: 1945—49-ին աշխատել է Էստոնիայի Կ(բ)Կ ԿԿ-ում, 1948—49-ին՝ ԷԿ(բ)Կ ԿԿ-ի քարտուղար: 1949—51-ին ԷՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ: 1951—61-ին՝ նախագահ: 1961-ից ԷՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության նախագահ և ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության նախագահի տեղակալ: ՍՄԿԿ XIX—XXII համագումարներում ընտրվել է ՍՄԿԿ ԿԿ անդամության թեկնածու, XXIII համագումարում՝ ՍՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամ: ՍՍՀՄ IV—VII գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Պարգևատրվել է Լենինի 4 և այլ շքանշաններով:



Մ. Մնակյան



Ա. Ս. Մնացականյան

**ՄՆԱԿՅԱՆ** Մարտիրոս (1837, Կ. Պոլիս — 1920, Կ. Պոլիս), հայ դերասան, ռեժիսոր, թատերական գործիչ: Բեմ է բարձրացել 1859-ին, Կ. Պոլսում, եղել «*Արևելյան թատրոնի*» առաջատար դերասաններից (1861—1867): Դերերից են՝ Պապ (Ս. Վանանդեցու «Մեծն Ներսես»), Նեոկլես (Պ. Մետաստազիոյի «Թեմիստոկլես»), Ռուդոլֆո (Վ. Հյուգոյի «Անջելո»): 1872—79-ին եղել է Պ. Մաղաքյանի և Հ. Վարդովյանի թատրոններում, 1880—82-ին՝ Թիֆլիսի հայ թատերախմբում: Կատարել է սալոնային դերեր: Մելոդրամայի վարպետ էր՝ հոգեբանական ծայրահեղ վիճակների, անսպասելի անցումների հակումով: Դասական խաղացանկում ճանաչվել է խարակտերային դերերով՝ Պետրուչիո, Շայլոկ (Շեքսպիրի «Անսանձ կնոջ սանձահարումը», «Վենետիկի վաճառականը»), Ֆամուսով (Գրիբոյեդովի «Խելքից պատուհաս»), Վիշնևսկի (Ա. Օստրովսկու «Եկամտաբեր պաշտոն»), Դոն Ժուան (Մոլիերի «Դոն Ժուան»): Առավել հաջողություն է ունեցել ռոմանտիկական դրամաներում՝ Քին (Ա. Դյումա-հոր «Քին»), Կարլ Մոոր (Շիլլերի «Ավազակներ»), Արբենին (Լերմոնտովի «Դիմակահանդես»): 1883—85-ին Մ. եղել է Ս. Պենկլյանի օպերետային խմբում, 1885—1914-ին՝ «*Օսմանյան դրամատիկ թատերախմբի*» տնօրենը, ռեժիսորն ու առաջատար դերասանը: Թարգմանել, բեմադրել և խաղացել է եվրոպական մելոդրամաներ թուրքերեն, երբեմն նաև հայերեն: Մ-ի խումբը պոլսահայ վերջին թատերական կազմակերպություններից էր, որ նպաստել է նաև թուրք պրոֆեսիոնալ դրամատիկական թատրոնի զարգացմանը:

*Գրկ.* Ստեփանյան Գ., Ուրվագիծ արևմտահայ թատրոնի պատմության, հ. 2, Ե., 1969: Հովհաննիսյան Հ., Մարտիրոս Մնակյան, Ե., 1969: *Հ. Հովհաննիսյան*

**ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ** (Մնացականով) Ալեքսանդր Սիդորի (ծն. 23.2.1921, ք. Օրջոնիկիձե), Սովետական Միության հերոս (24.3.1945), գեներալ-մայոր (1968): ՍՄԿԿ անդամ 1946-ից: Ավարտել է Կամիշինի տանկային ուսումնարանը (1942), Մոսկվայի Զրահատանկային և մեքենայացված զորքերի ռազմ. ակադեմիան (1948): 1942-ի օգոստոսից մինչև 1943-ի հունվարը, որպես տանկային դասակի հրամանատար, մասնակցել է Ստալինգրադի ճակատամարտին, 1943-ի կեսերից՝ Լենինգրադի ազատագրման մարտերին, որտեղ թշնամու պաշտպանական բնագծերը ճեղքելու ժամանակ ցուցաբերած արիության

համար արժանացել է հերոսի կոչման: Պարգևատրվել է Լենինի շքանշանով: Ետպատերազմյան տարիներին ծառայել է սովետական բանակի տարբեր օկրուգներում, Թամանյան դիվիզիայում, ապա Մոսկվայում՝ սովետական բանակի գլխավոր շտաբում: *Գ. Հարությունյան*

**ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ** Ասատուր Շմավոնի [գրական անունը՝ Ասատուր Շեմս, ծն. 11.7.1912, Ղզլթամուր (այժմ՝ Ոսկեվազ, ՀՍՍՀ Աշտարակի շրջանում)], հայ սովետական պատմաբան, բանասեր, արվեստաբան: Պատմական գիտ. դ-ր (1964), պրոֆեսոր (1973): 1939-ին ավարտել է Թբիլիսիի գյուղատնտ. ինստ-ը: 1940-ից աշխատում է Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանում: Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: 1955-ին հրատարակել է «Հայկական զարդարվեստ» աշխատությունը, որտեղ լուսաբանված են հայկ. զարդարվեստի հիմնական մոտիվների ծագման գաղափարական բովանդակության հարցերը: «Հայկական միջնադարյան ժողովրդական երգեր» (1956) ժողովածուում Մ. առաջին անգամ ի մի է բերել այդ երգերի քննական բնագրերը՝ գիտական ուսումնասիրությամբ: «Աղվանից աշխարհի գրականության հարցերի շուրջը» (1966) աշխատության մեջ հեղինակը մասնավորապես քննում և պարզաբանում է պատմական Հայաստանի Արցախ և Ուտիք գավառների պատմության հարցեր: «Հայ միջնադարյան հանելուկներ. IV—XVIII դդ.» (1980) գիրքն ընդգրկում է այդ շրջանի հանելուկների հարուստ ժառանգությունը՝ գիտաքննական բնագրերով: Գրել է ուսումնասիրություններ Նաղաշ Հովնաթանի, Բաղդասար Դպիրի (երկուսն էլ՝ Շ. Նազարյանի հեղինակակցությամբ), Գրիգոր Տղայի մասին, կազմել նրանց գործերի գիտական բնագրերը: Լ. Ս. Խաչիկյանի հետ ղեկավարել է Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանի ձեռագրացուցակի 1-ին և 2-րդ հատորների (1965, 1970) կազմումն ու խմբագրումը: Կազմել է «Հայ գրականության քրեստոմատիա» (1970)՝ 8-րդ դասարանի համար: Հրատարակել է նաև բանաստեղծությունների գրքույկներ: Պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով: *Ս. Դոլուխանյան*

**ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ** Արամայիս Նավասարդի [ծն. 1911, գ. Բյուրական (այժմ՝ ՀՍՍՀ Աշտարակի շրջանում)], հայ սովետական պատմաբան: Պատմ. գիտ. դ-ր (1957), պրոֆեսոր (1966): ՍՄԿԿ անդամ 1938-ից: Ավարտել է Հայկական մանկավարժական ինստ-ի պատմության ֆակուլտետը (1940): 1942-ից մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին (եղել է ռազմաճակատային թերթերի խմբագիր): Աշխատել է ՀԿԿ Երևանի կազմակերպության Կիրովյան շրջկոմի առաջին քարտուղար (1948—50), ՀԿԿ Կենտկոմի ագիտացիայի և պրոպագանդայի բաժնի վարիչ (1950—51), ՀԿԿ Երևանի օկրուգային կոմիտեի առաջին քարտուղար (1952—53), մարքսիզմ-լենինիզմի ինստ-ի հայկ. մասնաճյուղի դիրեկտոր (1954—58), այնուհետև՝ ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստ-ում (ավագ գիտաշխատող, սեկտորի վարիչ): Աշխատությունները վերաբերում են Հայաստանի ու Անդրկովկասի հեղափոխական շարժումներին («Ռևոլյուցիան Անդրկովկասում և Ռուսաստանի պատմիչակները», 1961, «Վ. Ի. Լենինը և հայ ժողովրդի ազատագրական պայքարը», 1963, «Հոկտեմբերի բարիկադների վրա», 1967) Հայրենական մեծ պատերազմին [«Հայ ժողովուրդը Հայրենական մեծ պատերազմում (1941—1945)», 1954], կուսակցական և ռազմ. գործիչներին («Ալեքսանդր Մյասնիկյան», 1955, «Մարշալ Բաղրամյան», 1978): ՀԿԿ XV—XVIII համագումարներում ընտրվել է ՀԿԿ Կենտկոմի անդամ, եղել Հայկ. ՍՍՀ III—V գումարումների Գերագույն սովետի դեպուտատ: Պարգևատրվել է Կարմիր աստղի շքանշանով: *Գ. Սարգսյան*

**ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ** Էլվիրա Գուրգենի (ծն. 17.8.1944, Երևան), սովետական բալետի հայ արտիստուհի: ՀՍՍՀ ժող. արտիստուհի (1978): ՍՄԿԿ անդամ 1973-ից: 1963-ին ավարտել է Երևանի պարարվեստի ուսումնարանը (Ա. Բոզանկովայի դասարան): Նույն թվականից՝ Երևանի օպերայի և բալետի մենապարուհի: Լավագույն դերապարերից են՝ Մոխրոտ (Պրոկոֆևի «Մոխրոտը»), Արմավենի (Սպենդիարյանի «Երեք արմավենի»), Անահիս (Եղիազարյանի «Անուրջների լիճը»), Կիտրի (Մինկուսի «Դոն Կիխոտ»), Օդետա-Օդիլիա (Չայկովսկու «Կարապի լիճը»), Ֆրիգիա, Էգինա (Խաչատրյանի «Սպարտակ») ևն: Հյուրախաղերով հանդես է եկել Սովետական Միության մի շարք քաղաքներում և արտասահմանյան երկրներում (ԱՄՆ, ԳՖՀ, Արգենտինա, Մեքսիկա, Իտալիա ևն): *Գ. Ստեփանյան*



Է. Մ ն ա ց ա կ ա ն յ ա ն ը  ելույթի պահին

**ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ** Մանուկ Ցախշիրեկի (ծն. 29.6.1934, Երևան), հայ սովետական արձակագիր: Ավարտել է Երևանի Կ. Մարքսի անվ. պոլիտեխնիկական ինստ-ը (1956): Հրատարակվել է 1959-ից: Լույս է ընծայել «Մեծ քաղաքի աղմուկը» (1962), «Նահանջ տարի» (1974), «Կանչ» (ռուս,. 1980) պատմվածքների ժողովածուները, «Չալոգը» (1966), «Երկուշաբթիից երկուշաբթի» (1968) վիպակները: Գրում է նաև մանուկների համար («Հեքիաթներ Աննայի համար», 1980): Նրա սցենարներով նկարահանվել են «Խաչմերուկում» [1975, Մանհայմի (ԳՖՀ) կինոփառատոնի «Ոսկե կինոդուկատ» մրցանակ] և «Ճանապարհին» (1976) գեղարվեստական կինոնկարները:

**ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ** Պետրոս Մկրտչի (կուսակցական ծածկանունը՝ Պ ի ե ր) [1867, Գանձակ (այժմ՝ Կիրովաբադ)—1933, Բաքու], Անդրկովկասի հեղափոխական շարժումների մասնակից: Կոմունիստական



Պ. Մ. Մնացականյան

կուսակցության անդամ 1905-ից: 1906-ից Բաքվում և Թիֆլիսում աշխատակցել է բոլշևիկյան թերթերին, կատարել կուսակցական հանձնարարություններ: Բաքվում նրա լուսանկարչատունը եղել է բոլշևիկների ընդհատակյա հավաքատեղի: Մուսավաթականների տիրապետության ժամանակ Մ. Բաքվի ընդհատակյա բոլշևիկյան կոմիտեի ակտիվ անդամներից էր: Կուսակցական աշխատանք է տարել նաև Լեռնային Ղարաբաղում: Սովետական իշխանության հաստատումից հետո եղել է Բաքվի «Կոմունիստ» (հայերեն) թերթի խմբագրական կոլեգիայի անդամ: *Լ. Առաքելյան*

**ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ** Ստեփան Խաչատուրի [ծն. 5(18).11.1917, Նոր Բայազետ (այժմ՝ Կամո)], հայ սովետական ճարտարապետ: Ճարտարապետության դ-ր (1967): ՍՄԿԿ անդամ 1947-ից: 1941-ին ավարտել է Երևանի պոլիտեխնիկական ինստ-ի շինարարական ֆակուլտետը: 1950-ից աշխատում է ՀՍՍՀ ԳԱ արվեստի ինստ-ում, 1965-ից՝ կերպարվեստի բաժնի վարիչ: Ի թիվս այլ պրոբլեմների Մ. ուսումնասիրել է պատմական հայ ճարտ-յան կենտրոնագմբեթ կառույցների ձևերի էվոլյուցիան՝ հիմք ունենալով Զվարթնոցի համակարգը: Մ-ի գիտական աշխատանքների մյուս կարևոր արդյունքը հայ ճարտ-յան Սյունիքի դպրոցի հետազոտումն ու նրա գիտական հիմնավորումն է:

*Երկ.* Հայկական ճարտարապետության Սյունիքի դպրոցը, Ե., 1960: Նիկողայոս Մառը և հայկական ճարտարապետությունը, Ե., 1969: Զվարթնոցը և նույնատիպ հուշարձանները, Ե., 1971: Հայկական աշխարհիկ պատկերաքանդակը IX—XIV դարերում, Ե., 1976: Архитектура армянских притворов, Е., 1952; Звартноц, М., 1971; Documenti di architettura Armena, 1, Haghbat, Milano, 1968 (հեղինակակից Ալպագո Նովելլո Ա.): *Լ. Բաբայան*

**ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ** Վազգեն Միքայելի [ծն. 15.10.1915, գ. Գետաշեն (այժմ՝ Ադրբ. ՍՍՀ Խանլարի շրջանում)], հայ սովետական գրականագետ, քննադատ: Բանասիրական գիտ. թեկնածու (1962): ՍՄԿԿ անդամ 1943-ից: 1939-ին ավարտել է Լենինգրադի օտար լեզուների ինստ-ի ֆրանս. ֆակուլտետը: Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: 1948—53-ին

եղել է «Գրական թերթ»-ի, 1958—61-ին՝ «Սովետական գրականություն» ամսագրի խմբագիրը: 1971-ից ՀՍՍՀ ԳԱ Մ. Աբեղյանի անվ. գրականության ինստ-ի դիրեկտորի տեղակալն է: Մ-ի ուսումնասիրությունների ասպարեզը սովետահայ գրականության արդիական խնդիրներն են: 1958-ին տպագրվել է նրա «Գրական հարցեր» գիրքը: «Գեղամ Սարյանի պոեզիան» (1963, ռուս. հրտ. «Գեղամ Սարյան», 1964) աշխատությամբ Մ. արժեքավորել է բանաստեղծի գրական վաստակը: Հրատարակել է «Ժամանակի հետ» (1968), «Տարիներ և ճակատագրեր» (1978), «Քննադատի աշխարհը» (1981) քննադատական, գրականագիտական հոդվածների ժողովածուները: Հանդես է գալիս նաև Վազգեն Դարբնի գրական անունով: Պարգևատրվել է Կարմիր աստղի 2 շքանշանով:

*Ա. Դոլուխանյան*

**ՄՆԱՑԱԿԱՆՈՎ** Տիգրան Սերգեյի (8.11. 1899, Բաքու — 9.11.1968, Երևան), հայ սովետական բժիշկ, թերապևտ: Բժշկ. գիտ. դ-ր (1940), պրոֆեսոր (1940): Ուզբեկական ՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1943): Ավարտել է Բաքվի համալսարանի բժշկ. ֆակուլտետը (1925): Աշխատել է Սամարղանդի բժշկ. ինստ-ի ֆակուլտետային թերապիայի ամբիոնում (1940-ից՝ վարիչ), միաժամանակ դիրեկտորի տեղակալ գիտա-ուսումնական մասի գծով: 1949—1968-ին եղել է Երևանի բժշկ. ինստ-ի ֆակուլտետային թերապիայի ամբիոնի վարիչ: Գիտական աշխատանքները հիմնականում վերաբերում են շնչառական, սիրտ-անոթային, ստամոքս-աղիքային համակարգերի, ներզատիչ գեղձերի և երիկամների ախտաբանությանը: Զբաղվել է ՀՍՍՀ կուրորտային վայրերի ուսումնասիրությամբ, *Ջերմուկ* առողջարանի հիմնադիրներից է: Մ. եղել է ՀՍՍՀ IV և V գումարումների Գերագույն սովետի դեպուտատ, ՀՍՍՀ Գերագույն սովետի առողջապահության հանձնաժողովի նախագահ (1956—63), ՀՍՍՀ թերապևտների, էնդոկրինոլոգների գիտական ընկերության նախագահ: Պարգևատրվել է Լենինի, Աշխատանքային կարմիր դրոշի և «Պատվո նշան» շքանշաններով:

*Երկ.* Էնդոկրին գեղձերի հիվանդություններ, Ե., 1958 (համահեղինակ Գևորգյան Գ. Գ.): Անհետաձգելի թերապևտիկ հիվանդություններ, Ե., 1969 (համահեղինակ Գևորգյան Գ. Գ.):

**ՄՆԱՑՈՐԴԱՅԻՆ ԴԵՖՈՐՄԱՑԻԱ**, *դեֆորմացիայի* այն մասը, որը պահպանվում է արտաքին ուժերի ներգործությունը վերացնելուց հետո: Մ. դ. ի հայտ է գալիս այն դեպքում, երբ դեֆորմացիայի հետևանքով առաջացող լարումները գերազանցում են մարմնի առաձգականության սահմանը: Ուժի ազդեցությամբ՝ առանց նյութի հոծության մակրոսկոպիկ խախտումների առաջացող Մ. դ. կոչվում է պլաստիկ դեֆորմացիա: Որոշակի պայմաններում բազմակի բեռնավորումից առաջացող Մ. դ-ները կուտակվում են և հանգեցնում կոնստրուկցիայի քայքայմանը:

Մ. դ-ի օգտագործման վրա են հիմնված կռումը, քարշումը, գլոցումը և տեխնոլոգիական այլ պրոցեսներ:

**ՄՆԱՑՈՒԿՆԵՐ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ**, թափոններ արտադրական, արտադրության պրոցեսում առաջացող մնացուկներ (հանքամանրուք, կտորտանք, տաշեղ, միներալային հումքի և վառելիքի բալաստային մասը, մոխիր, խարամ ևն): Մնացուկների քանակը կախված է արտադրության տեխնոլոգիայից, սկզբնական հումքի որակից, նյութի չափակազմից, արտադրական պրոցեսների կազմակերպումից: Տեխ. առաջընթացը հնարավորություն է տալիս կրճատել արտադրության մնացուկների քանակը, ինչպես նաև օգտագործել դրանց զգալի մասը կողմնակի արտադրանք ստանալու համար, որն էապես նպաստում է հումքի և նյութի ծախսի, արտադրանքի արժեքի կրճատմանը և արտադրության արդյունավետության բարձրացմանը:

ՍՍՀՄ-ում և մի շարք այլ երկրներում ստեղծվում են նոր տեխնոլոգիական պրոցեսներ՝ արտադրության մնացուկների քանակը հնարավորին չափով կրճատելու, իսկ առանձին դեպքերում՝ լիովին վերացնելու նպատակով:

Այդ պրոցեսներին են վերաբերում փակ շրջանային տեխնոլոգիական ցիկլերի մշակումը, կեղտաջրերի և մթնոլորտ դուրս եկող արտանետվածքների տեսքով արտադրության մնացուկների կրճատումը: Ստեղծվում են արդ. համալիրներ, որտեղ մի ձեռնարկությունը որպես հումք օգտագործում է մյուսի մնացուկները:

Այս միջոցառումները զգալի չափով ապահովում են *շրջակա միջավայրի* մաքրությունը և հնարավորություն են տալիս տնտեսելու բնական պաշարները:

**ՄՆԱՑՔ**, 1. թվերի տեսության մեջ. a թիվը կոչվում է b թվի մնացքը ըստ m մոդուլի, եթե (a—b)-ն բաժանվում է m-ի վրա: Օրինակ՝ 17-ը 3-ի մնացքն է ըստ 7 մոդուլի՝ (17—3)-ը բաժանվում է 7-ի վրա: 0, 1, 2, ...,m-1 թվերից մեկի (և միայն մեկի) մնացք հանդիսացող m թվերից կազմված յուրաքանչյուր համախմբություն անվանում են ըստ m մոդուլի մնացքների լրիվ համակարգ: Օրինակ՝ 1, 6, 11, 16, 21, 26 թվերը ըստ 6 մոդուլի լրիվ համակարգ են կազմում:

2. Անալիտիկ ֆունկցիաների տեսության մեջ, մեկ փոփոխականի միարժեք f(z) անալիտիկ ֆունկցիայի մնացք այդ ֆունկցիայի առանձնացված և վերջավոր a եզակի կետում անվանում են f(z)-ի *Լորանի շարքի* $(z-a)^{-1}$ անդամի $c_1$ գործակիցը: Եթե γ-ն a կենտրոնով այնպիսի շրջանագիծ է, որի վրա և ներսում f(z)-ը a-ից բացի այլ եզակի կետեր չունի, ապա f(z)-ի մնացքը a կետում [Res(f; a)] հավասար է՝

$$\mathrm{Res}(f;\ a)=\frac{1}{2\pi i}\int_{\gamma} f(z)dz:$$

Մնացքների տեսության մեջ հիմնական է հետևյալ թեորեմը. եթե f(z)-ը միարժեք է և անալիտիկ D միակապ տիրույթում, բացառությամբ առանձնացված եզակի կետերի, ապա՝

$$\int_{\gamma} f(z)dz=2\pi i\sum_{k=1}^{n}\mathrm{Res}(f;\ a_k), \qquad (1)$$

որտեղ γ-ն D-ում ընկած կամայական, փակ, պարզ կոր է, իսկ $a_1$, $a_2$, ..., $a_n$ կետերը՝ f(z)-ի եզակիությունները γ-ի ներսում:

Քանի որ մնացքը համեմատաբար հեշտ է հաշվվում, ապա (1) բանաձևը ինտեգրալներ հաշվելու հարմար միջոց է:

**ՄՆԴՈՅԱՆՑ** Աշոտ Աշոտի [28.12.1909 (10.1.1910), Բաթում — 29.9.1966, Մոսկվա], հայ սովետական ճարտարապետ: Ավարտել է Օդեսայի կոմունալ և քաղաքացիական շինարարության ինստ-ը (1932): 1932—35-ին աշխատել է Բաթումում (1934—35-ին՝ քաղաքի գլխավոր ճարտ.): 1935-ին փոխադրվել է Մոսկվա: Երկար տարիներ աշխատակցել է Ա. *Շչուսևին*: 1960-ից ղեկավարել է Մոսկվայի ճարտարապետական-հատակագծային խորհրդի արվեստանոցներից մեկը: Գործերից են. Մոսկվայում՝ բարձրաբերձ բնակելի տուն Ապստամբության հրապարակում (1950—54, նախագիծը արժանացել է ՍՍՀՄ պետ. մրցանակի, 1949), Կրեմլի Համագումարների պալատը (1959—61, լենինյան մրցանակ, 1962), Կալինինի պողոտայի կառուցապատումը (1964—69)՝ Տնտ. փոխօգնության խորհրդի շենքերի համալիրով (1969), «Հոկտեմբեր» կինոթատրոնով (1967), խանութներով ու ռեստորաններով, առողջարանային համալիր Պիցունդայում (1962—67), ՍՍՀՄ տաղավարը Մոնրեալի համաշխարհային ցուցահանդեսում (1965—67, բոլորն էլ՝ ճարտ. Մ. Պոսոխինի և ուրիշների հետ): Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի և «Պատվո նշան» 2 շքանշաններով:

*Վ. Հարությունյան*

Ա. Ա. Մնդոյանց

ՍՍՀՄ տաղավարը Մոնրեալի համաշխարհային ցուցահանդեսում (1965—67, ճարտ-ներ՝ Ա. Ա. Մնդոյանց, Մ. Վ. Պոսոխին և ուրիշներ)

**ՄՆԵՄՈՆԻԿ ՍԽԵՄԱ** (< հուն. μνημονικός — լավ հիշողությամբ օժտված), կառավարվող օբյեկտի պայմանական պատկերումը սիմվոլների և ինդիկատորների օգնությամբ, որոնք սխեմայի տեսքով տեղադրված են դիսպետչերական վահանի կամ կառավարման պուլտի վրա: Մ. ս. օբյեկտի պարզեցված մոդելն է: Ցույց է տալիս նրա վիճակը կամ արտադրության պրոցեսի ընթացքը: Հսկվող պրոցեսի վիճակը (աշխատանք, պարապուրդ, վթար, նորոգում) ավտոմատ կերպով արտացոլվում է Մ. ս-ի վրա ազդանշանային լամպերով, կրկնական ցուցիչներով և ուրիշ ինդիկատորներով: Լայնորեն կիրառվում է զանազան օբյեկտների հեռակառավարման ժամանակ, օրինակ, էլեկտրակայաններում, երկաթուղու դիսպետչերական ծառայություններում:

**ՄՆԵՄՈՆԻԿԱ** (<հուն. μνημονικόν—մտապահման արվեստ), հնարների համակարգ, որի օգնությամբ ստեղծվում են մտապահվող բառերի կամ պատկերների արհեստական զուգորդություններ, մտապահումը ու վերարտադրությունը բարելավելու և *հիշողության* ծավալը ընդլայնելու նպատակով:

Հիշողության արդյունավետությունը մեծացնելու համար դեռևս հնագույն ժամանակներից մարդիկ օգտվել են տարբեր «նեցուկներից» (հանգույց, նշան ևն): Մնեմոնիկական հնարների համակարգի ստեղծման փորձեր են կատարել հին եգիպտացիները, հույներն ու հռոմեացիները: Մ-ի նկատմամբ մեծ հետաքրքրություն է առաջացել հատկապես XVII—XIX դդ.: Մնեմոնիկական հնագույն մեթոդներից է «տեղերի մեթոդը», որի օգնությամբ մտապահվում են առարկաների շարքեր: Այդ առարկաները մտովի պատկերացվում են առանձին տեղերում (օրինակ, սենյակների պատերին տեղադրված իրերի դասավորությունը), որոնց կարգը մարդը նախապես սերտել է. կամ օտար լեզվի բառերի մտապահումը հեշտացնելու նպատակով հնարում են պատմվածք՝ նրանում մտցնելով մտապահման ենթակա բառեր: Կա նաև մտապահման այլ տարբերակ: Մտապահում են 10 հենակետային բառ, ապա յուրաքանչյուր նոր տասնյակի բառերը համապատասխանեցնում հենակետային ցուցակի բառերից յուրաքանչյուրի հետ: Նոր տասնյակը հետագայում վերարտադրելու համար բավական է վերհիշել հենակետային բառերը, որոնցից յուրաքանչյուրը զուգորդաբար գիտակցության մեջ է տեղափոխում պահանջված բառը: Ներկայումս Մնեմոնիկական հնարներն օգտագործվում են հիմնականում էստրադայում մտապահման արվեստ ցուցադրելիս:

*Ա. Նալչաջյան*

**ՄՆԵՍԻԿԼԵՍ** (Μνησικλῆς), մ. թ. ա. V դարի 2-րդ կեսի հին հույն ճարտարապետ: Կառուցել է Աթենքի Ակրոպոլիսի մոնումենտալ շքամուտքը՝ Պրոպիլեյնը (մ. թ. ա. 437—432): Այն տարբեր մակարդակներում տեղադրված, հոնիական սյունաշարով միացած դորիական երկու պորտիկներ են (մեկն ուղղված դեպի քաղաք, մյուսը՝ Ակրոպոլիս): Պրոպիլեյնի հս. թևում պինակոտեկան էր:

**ՄՆՁՈՒՐ**, Մ ը ն ձ ու ր, Մ ու ն զ ու ր, գետ Հայկական լեռնաշխարհում, Արածանիի աջ վտակը: Երկարությունը մոտ 163 *կմ* է: Սկիզբ է առնում Մնձուր լեռների հվ. լանջից, մոտ 2780 *մ* բարձրությունից, հոսում անդնդախոր, անտառապատ նեղ կիրճով և Խարբերդի դաշտում խառնվում Արածանիին: Սնումը խառն է, հորդացումը՝ ապրիլ—մայիսին:

**ՄՆՁՈՒՐ**, Մ ու ն զ ու ր, լեռներ Հայկական լեռնաշխարհում, Ներքին Տավրոսի արևմտյան, առավել բարձր մասը: Ձգվում է Եփրատից մինչև Մերջան զագաթը, 90 *կմ* երկարությամբ և 3000 *մ* միջին բարձրությամբ: Կազմված է կրաքարերից, մարմարներից, բյուրեղային թերթաքարերից, տեղ-տեղ ուլտրահիմքային ապարների ներժայթուկներից: Հվ. լանջերը զառիթափ են, մասնատված Եփրատի վտակներով:

**ՄՆՁՈՒՐ**, Մ զ ու ր, գավառ Մեծ Հայքի Բարձր Հայք նահանգում, Արածանիի աջակողմյան վտակ Քղի գետի Մնձուր օժանդակի հովտում (այժմ՝ Օվաջըի շրջան): Մ-ի մեծ մասը փռված էր համանուն լեռների լանջերին: Արմ-ից Մ. սահմանակից էր Փոքր Հայքին, իսկ հվ-ից՝ Չորրորդ Հայքին, որի պատճառով որոշ ուսումնասիրողներ Մ. մտցնում են վերջինիս մեջ: Հնագույն ժամանակներում Մ. կազմում էր Եկեղյաց գավառի մասը, իսկ հետագայում, վերջինիս մասնատման հետևանքով, արդեն հիշատակվում է իբրև առանձին գավառ: Մեծ Հայքի բաժանումից (387) հետո գտնվում էր Հայաստանի բյուզանդ. մասում և մտնում Ներքին Հայքի մեջ, որը Հուստինիանոսի (527—565) վարչական վերափոխությունից հետո, շրջակա մի քանի գավառների հետ կոչվեց Առաջին Հայք, իսկ VII դ. «Աշխարհացոյց»-ում՝ *Բարձր Հայք*: *Թ. Հակոբյան*

**ՄՆՁՈՒՐԻ** Հակոբ [իսկականը՝ Տեմիրճյան Հակոբ, 16.10.1886, գ. Արմտան (Էրզրումի վիլայեթում)—1978, Ստամբուլ], հայ գրող: Սովորել է Կ. Պոլսի Ղալաթիո նախակրթարանում, ապա՝ անգլ. Ռոբերտ կոլեջում: Մ-ի առաջին պատմվածքը («Հարս ու կեսուր») լույս է տեսել 1906-ին: Այնուհետև պարբերական մամուլում (հիմնականում՝ պոլսահայ) տպագրել է հարյուրից ավելի պատմվածքներ (առավելապես գյուղական կյանքից), ինչպես նաև


Հ. Մնձուրի

շատ հեքիաթներ, ակնարկներ, ժամանակագրություններ, թատերգություններ: Հրատարակել է «Կապույտ լույս» (1958), «Արմտան» (1966) և «Կռունկ, ուստի՛ կուգաս» (1974) ժողովածուները: Մ., որի հերոսները տարբեր ազգերի աշխատավոր մարդիկ են, վերակենդանացրել է ծննդավայր Արմտան գյուղը՝ իր բնության հրաշալիքներով: Ունի ինքնատիպ ոճ, առանձնանում է լեզվի ջերմությամբ, անմիջականությամբ ու գունեղությամբ: Սերտ կապերի մեջ է եղել Սովետական Հայաստանի հետ: 1976-ին Երևանում նշվել է Մ-ի ծննդյան 90-ամյակը: *Գ. Սևան*

**ՄՆՋԱԽԱՂ**, բեմարվեստի տեսակ, ուր դերասանի արտահայտչալեզուն սահմանափակված է տարածա-ժամանակային ձևում (շարժում, դիմախաղ, ժեստ): Մ-ի առաջին նկարագրությունը վերաբերում է մ. թ. ա. 420-ին (Քսենոֆոնի «Խնջույք»): Հին Հունաստանում Մ. սկզբնապես ունեցել է ծիսախաղային բնույթ, հետագայում, հատկապես հելլենիզմի դարաշրջանում, կատարելագործվել է որպես ինքնուրույն արվեստ. հայտնի են Բաֆիլոս Ալեքսանդրացու և Պիլադես Կիլիկեցու անունները (I դ.): Հին Հռոմում Մ-ի արվեստը նույնանում է բալետի հետ, վերարտադրում դիցաբանական սյուժեներ և կերպարներ («Վեներա», «Մարս», «Հերկուլես» ևն): Մ. տարածվել է նաև առաջավորասիական երկրներում և IV—VII դդ. դարձել պրոֆեսիոնալ թատրոնի հիմնական տեսակներից Կապադովկիայում, Բյուզանդիայում, Ասորիքում, Հայաստանում: Հին արևելյան երկրներում, հատկապես Հնդկաստանում, Չինաստանում, Ճապոնիայում, Մ. դրսևորվել է խիստ յուրահատուկ և պայմանական-սիմվոլիկ ձևերով: Մ-ի տարրերով հարուստ են եղել բոլոր ժողովուրդների հին թատրոնները և առհասարակ թատերական բանահյուսությունը: Նոր ժամանակներում Մ. դարձել է թատերա-էստրադային ինքնուրույն ժանր, որի նշանավոր վարպետներից են՝ Ջ. Գրիմալդին, Ժ. Դեբյուրոն (XIX դ. սկիզբ), Ժ. Լ. Բարրոն, Մ. Մարսոն, Լ. Ֆիալկան (XX դ.) և ուրիշներ: XX դ. սկզբում Մ-ի տարրերը ներթափանցել են նաև դրամատիկական բեմ (Գ. Ֆուկս, Մ. Ռայնհարդ, Է. Ժակ-Դալկրոզ, Վ. Մեյերխոլդ, Ն. Եվրեինով, Ե. Վախթանգով և ուրիշներ): Սկզբունքորեն մնջախաղային է նաև Չ. Չապլինի արվեստը կինոյում: Մ-ի արտահայտչալեզվից տարբեր չափերով ու եղանակներով օգտվում են ժամանակակից կրկեսը, բալետը, էստրադան, թատրոնը: Հայ իրականության մեջ Մ-ի խոշորագույն վարպետ է եղել Լ. *Ենգիբարյանը*: 1974-ից Երևանում «Հայհամերգին» կից գործում է Մ-ի թատրոն:

*Հ. Հովհաննիսյան*

**ՄՆՋՈՅԱՆ** Արմենակ Լևոնի [23.11.1904, Սարիղամիշ (Կարսի մարզում)—20.2.1970, Երևան], հայ սովետական քիմիկոս: ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (1953), ՀՍՍՀ գիտ. վաստ. գործիչ (1961): Սոցիալիստական աշխատանքի հերոս (1969): ՍՄԿԿ անդամ 1944-ից: Ավարտել է Մոսկվայի համալսարանի քիմիադեղագործական (1928) և Երևանի համալսարանի բժշկ. (1933) ֆակուլտետները: Կազմակերպել և ղեկավարել է ՀՍՍՀ դեղատների վարչության գիտահետազոտական արտադրական լաբորատորիան (1928—38): Եղել է Երևանի բժշկ. ինստ-ի անօրգանական (1937—39) և օրգ. (1937—46), միաժամանակ Երևանի համալսարանի օրգ. քիմիայի (1937—41 և 1942—51) ամ-


Ա. Լ. Մնջոյան

քիոնների վարիչ: Հայրենական մեծ պատերազմի տարիներին կազմակերպել և ղեկավարել է հատուկ քիմ. լաբորատորիա, ուր սինթեզվել են կարևոր դեղանյութեր ու մարտական թունանյութերը հայտնաբերող ինդիկատորներ: 1945—50-ին ՀՍՍՀ ԳԱ քիմիայի ինստ-ի դիրեկտորն էր: Նրա կազմակերպած դեղագործական քիմիայի լաբորատորիայի հիմքի վրա 1947-ին ստեղծվել է ՀՍՍՀ նուրբ օրգ. քիմիայի ինստ-ը (1971-ից՝ Ա. Լ. Մնջոյանի անվան), որի գիտական ղեկավարը և դիրեկտորն էր (մինչև 1970-ը): 1953—1960-ին եղել է ՀՍՍՀ ԳԱ փոխպրեզիդենտը, իսկ 1964—67-ին՝ քիմ. բաժանմունքի ակադեմիկոս քարտուղարը: Մ-ի գիտական աշխատանքները վերաբերում են նոր, արդյունավետ դեղանյութերի սինթեզին և օրգանիզմի վրա դրանց ներգործության ուսումնասիրմանը: Մինչև 1937-ը զբաղվել է Հայաստանի բուսական և հանքային (թերթաքարեր) հումքից դեղանյութեր ստանալու հետազոտություններով, իսկ 1944-ից՝ թմրեցնող նյութերի սինթեզով: Մ-ի հետագա աշխատանքներում կարևոր տեղ են գրավում օրգ. միացության կառուցվածքի և կենսաբանական ակտիվության միջև կապի ուսումնասիրությունները: Մ. ֆիզիոլոգիապես ակտիվ նյութերի սինթեզի և հետազոտման ժամանակակից գիտական դպրոցի հիմնադիրն է ՀՍՍՀ-ում: Նրա ղեկավարությամբ սինթեզվել և ուսումնասիրվել են բազմաթիվ նոր, կենսաբանորեն ակտիվ նյութեր, որոնք փոխարկված ալկիլօքսիբենզոյական թթուների, քացախաթթուների և երկհիմն կարբոնաթթուների ածանցյալներ են: Դրանցից շատերը (դիթիլինը, գանգլերոնը, սուբեխոլինը, արփենալը, մեսֆենալը ևն) որպես դեղանյութեր կիրառվում են սիրտ-անոթային, նյարդա-հոգեկան, վարակիչ և այլ հիվանդությունների, չարորակ ուռուցքների բուժման համար: Պարգևատրվել է Լենինի երեք, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով:

**ՄՆՋՈՅԱՆ** Եղիա Լևոնի (ծն. 9.10.1917, Ալեքսանդրապոլ), հայ սովետական քիմիկոս-կենսաբան: Կենսբ. գիտ. դ-ր (1973): ՍՄԿԿ անդամ 1945-ից: Ա. Լ. *Մնջոյանի* եղբայրը: Ավարտել է Երևանի համալսարանի քիմ. ֆակուլտետը (1945): 1945—1966-ին աշխատել է խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության ԳՀԻ-ում, 1970-ից ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի գիտության և բարձրագույն ուսումնական հաստատությունների բաժնի վարիչն է: Մ-ի գիտական աշխատանքները հիմնականում վերաբերում են գինու և կոնյակի քիմիայի ու տեխնոլոգիայի հարցերին: Պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով:

**ՄՆՋՈՅԱՆ** Հովհաննես Լևոնի (ծն. 9.8.1920, Ալեքսանդրապոլ), հայ սովետական քիմիկոս: Կենսաբանական գիտ. դ-ր (1977): ՍՄԿԿ անդամ 1949-ից: Ա. Լ. *Մնջոյանի* եղբայրն է և աշակերտը: Ավարտել է Երևանի պոլիտեխնիկական ինստ-ի քիմիատեխնոլոգիական ֆակուլտետը (1947): Մասնակցել է Հայրենական մեծ պատերազմին: 1946-ից աշխատում է *նուրբ օրգանական քիմիայի ինստ-ում*: Մ-ի գիտական աշխատանքները վերաբերում են ացետիլխոլինի և նիկոտինի ածանցյալների սինթեզի և քիմ. միացության կառուցվածքի ու կենսաբանական ակտիվության կապի օրինաչափությունների պարզաբանմանը: Եռֆունկցիոնալ ամինների և ակտիվացված կարբօքսիլ խումբ պարունակող կարբոնաթթուների փոխազդեցության ռեակցիաների ուսումնասիրությունների շնորհիվ սինթեզվեցին կենսաբանորեն ակտիվ որոշ նյութեր (ամինաալկիլ էսթերներ, թիոէսթերներ և ամիդներ), որոնք կիրառվում են բժշկության մեջ՝ շնչարգելությունը, պարկինսոնյան հիվանդությունը, ստամոքսային խոցը, էպիլեպսիան ևն բուժելու համար: Պարգևատրվել է Կարմիր աստղի 2 շքանշանով: ՀՍՍՀ պետ. մրցանակ (1978):

**ՄՇԱԿ**, լայն առումով հողի մշակությամբ զբաղվող, երկրագործ, վարձու աշխատող, բանվոր: Հին Հայաստանում Մ. են կոչվել արքունի և տաճարային տիրույթներում աշխատող շինականները: Մ. կոչվել է այն հողագործը, որը մշակել է ուրիշի հողը, ունեցել սեփական տուն, ընտանիք: Միջնադարյան Հայաստանում Մ-ները կախյալ գյուղացիների այն խավն էին, որոնք կորցնելով իրենց հողակտորը, հաճախ նաև արտադրության գործիքները, վարձակալվում էին հողատեր-ֆեոդալների մոտ և աշխատում նրանց հողատիրույթներում: Ուշ միջնադարյան Հայաստանում Մ. էին համարվում աշխատավոր գյուղացիության բոլոր խավերը, ինչպես նաև վարձով աշխատող քաղաքաբնակները: XIX դ. և XX դ. սկզբին Մ. են կոչվել ընդհանրապես երկրագործները, վարձու աշխատողները, բանվորները:

Փոխաբերական իմաստով՝ որևէ բնագավառի (արվեստի, գիտության, կրոնի ևն) աշխատող:

**«ՄՇԱԿ»**, հասարակական, քաղաքական, գրական օրաթերթ (սկզբում՝ շաբաթաթերթ): Լույս է տեսել 1872—1921-ին (1885-ի ընդմիջումով), Թիֆլիսում: Հիմնադրել և մինչև 1892-ը խմբագրել է Գ. *Արծրունին*, հետագա տարիների խմբագիրներ՝ Ա. Քալանթար, Հ. Առաքելյան, Լեո (Ա. Բաբախանյան), Տ. Հախումյան: Արծրունյան շրջանի «Մ.» որպես ազատամիտ մտավորականության գաղափարական օրգան, առաջադրել է բուրժուա-դեմոկրատական վերափոխումների գործելակերպ՝ հիմնական հարվածն ուղղելով եկեղեցու և կղերականության դեմ: «Մ.» համախմբելով ժամանակի առաջադեմ հասարակական գործիչներին ու գրողներին (Պ. Պռոշյան, Ղ. Աղայան, Գ. Սունդուկյան, Շիրվանզադե, Վ. Փափազյան և ուրիշներ)՝ կարևոր դեր է կատարել հայ ժողովրդի մշակութային-լուսավորական կյանքում, մասնավորապես հայ նոր գրականության զարգացման գործում: Հատկապես նշանակալի է Րաֆֆու աշխատակցությունը, որի գեղարվեստական երկերն ու հրապարակախոսական հոդվածները ազգային-ազատագրական պայքարի էին կոչում ժողովրդին, մեծապես նպաստում թերթի հեղինակության բարձրացմանն ու ազդեցության ամրապնդմանը: «Մ.» ուներ ընդգծված ռուս. կողմնորոշում և թուրք. լծի տակ տառապող քրիստոնյա ազգերի, մասնավորապես՝ հայերի, փրկության հույսը կապում էր Ռուսաստանի հետ:

Թերթի գործունեության կարևոր ոլորտըն էր նաև պայքարը հայ դպրոցի դեմոկրատացման ու եկեղեցուց նրա անջատման համար:


№ 6 1920 ՄՇԱԿ № 6

Սոցիալ-քաղաքական հարցերում թերթին բնորոշ էին ռեֆորմիզմն ու տնտ. լիբերալիզմը: Մշակականները իրենց ներկայացնում էին իբրև հայ լիբերալ կուսակցություն, սակայն որպես այդպիսին չձևավորվեցին, և «մշակականություն»-ը փաստորեն նույնացավ հայկ. լիբերալ բուրժուազիայի քաղաքական-գաղափարական հոսանքի հետ: Թերթը, որպես սոցիալ-տնտեսական զարգացման պայման, մատնանշում էր խաղաղ, ռեֆորմիստական վերափոխումների ուղին:

Ետարծրունյան շրջանում պարբերականը զրկվեց դեմոկրատական երանգից՝ առավել շեշտված անցկացնելով բուրժ. գիծ: Նրանից հեռացան հայ դեմոկրատ գրողները: Ռուս. առաջին հեղափոխության տարիներին «Մ.» պաշտպանում էր կադետական ծրագիր և նեղ, ազգայնական հարցերի քննարկումով շեղում հայ աշխատավորության ուշադրությունը ցարիզմի դեմ պայքարից: Ողջունելով 1917-ի Փետրվարյան հեղափոխությունը՝ թերթը հանդես եկավ Ժամանակավոր կառավարության պաշտպանությամբ, չընդունեց Հոկտեմբերյան հեղափոխությունն ու սովետական իշխանությունը, պաշտպանեց անդրկովկասյան բուրժուա-ազգայնական կուսակցությունների քաղաքականությունը:

*Գրկ.* Դ ա ն ի ե լ յ ա ն Լ., «Մշակի» քառասնամյակ (1872—1912), Թ., 1912: «Մշակ» լրագիրը 1872—1875, Ե., 1975:

*Լ. Գևորգյան*

**«ՄՇԱԿ»**, քաղաքական, գրական թերթ (սկզբում՝ շաբաթական, այնուհետև՝ եռօրյա): Լույս է տեսել 1925—57-ին, Ֆրեզնոյում: Հիմնադիր-խմբագիր՝ Լ. Լյուլեճյան: Լուսաբանել է ամերիկահայ և սփյուռքի այլ գաղթավայրերի ազգային, կրթական, մշակութային կյանքը: «Հայաստան» խորագրով ներկայացրել է Սովետական Հայաստանի տնտ. և մշակութային կյանքի

հաջողությունները: Քաջալերել է ամերիկահայ հայրենակցական և ՀԲԸ միությունների, ՀՕԿ-երի ձեռնարկները ի նպաստ ՀՍՍՀ-ի: *Գ. Գույումջյան*

**ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՇԵՐՏ**, կուլտուրական շերտ, որոշակի ժամանակաշրջանի բնորոշ մշակութային հուշարձաններ կամ դրանց հետքերը պարունակող հողաշերտի պայմանական անվանումը հնագիտության մեջ: Հնավայրերը հաճախ ունենում են մի քանի Մ. շ., որոնք սովորաբար խառնված են լինում: Մ. շ-ի որոշելն ու տարբերակելը (*շերտագրություն*) հնագիտական պեղումների կարևորագույն խնդիրն է, քանի որ գերազանցապես շերտագրությամբ է որոշվում պեղվող հնավայրի մշակույթի պատմական զարգացման հաջորդականությունն ու ժամանակագրությունը: *Բ. Առաքելյան*

**ՄՇԱԿՈՒՄ** երաժշտության մեջ, 1. երաժշտության զարգացման տեսակ, որ կապված է թեմայի առանձին տարրերի մասնատման և դրանց ազատ վերափոխման հետ: 2. *Սոնատային ձևի* միջին բաժինը, ուր գերակշռում է զարգացման մշակուն տեսակը: 3. Երաժշտական ստեղծագործության նոտային տեքստի բնօրինակի ամեն մի փոփոխություն, որ որոշակի նպատակներ է հետապնդում (հարմարեցում սիրողների կատարման, ուսուցողական-մանկավարժական պրակտիկայում օգտագործելու համար ևն): XIX—XX դդ. մեծ նշանակություն է ստացել ժող. մեղեդիների Մ., որը մեծ մասամբ եղել է այդ մեղեդիների *ներդաշնակում*: Ժող. մեղեդիներ են մշակել Յո. Հայդնը, Լ. Բեթհովենը, Յո. Բրամսը, Ն. Ռիմսկի-Կորսակովը, Ա. Լյադովը, Ք. Կարա-Մուրզան, Ն. Տիգրանյանը և ուրիշներ: Գոյություն ունեցող երաժշտ. նյութի այնպիսի օգտագործումը, երբ տեղի է ունենում կոմպոզիտորի ստեղծագործական եռանդուն միջամտություն, և հիմնովին հարստացվում է սկզբնաղբյուրի կերպարային բովանդակությունը, դուրս է գալիս սովորական Մ-ի սահմաններից: Օրինակ՝ Կոմիտասի ժող. սկզբնաղբյուրներից սերված ստեղծագործությունները:

**ՄՇԱԿՈՒՅԹ**, կուլտուրա (< լատ. cultura — մշակում, դաստիարակում, կրթություն), հասարակության և մարդու պատմական զարգացման որոշակի մակարդակ, որն արտահայտվում է մարդկանց գործունեության և կյանքի կազմակերպման ձևերով ու տիպերով: «Մ.» հասկացությունը օգտագործվում է որոշակի պատմական դարաշրջանների, հասարակական-տնտեսական ֆորմացիաների, կոնկրետ հասարակարգերի, ազգությունների, ազգերի, ինչպես նաև կյանքի ու գործունեության առանձնահատուկ եղանակների զարգացման մակարդակը բնութագրելու համար (օրինակ, *Հելլենիստական մշակույթ*, բուրժ. Մ., *Մշակույթ հնագիտական*, հայկ. Մ., գեղարվեստական Մ. ևն): Երբեմն «Մ.» տերմինը վերագրում են կյանքի զուտ հոգևոր ոլորտին: Իդեալիստական տեսություններում Մ. անջատվում է նյութական հիմքից և դիտվում իբրև հասարակության «ընտրյալների» մենաշնորհ: Մ-ի մարքս-լենինյան տեսությունը ելնում է պատմական մատերիալիզմի սկզբունքներից, Մ. մեկնաբանելով որպես հասարակության առանձնահատուկ բնութագիր, որը որոշվում է բնության և հասարակության նկատմամբ մարդու հարաբերությամբ: Մ. ընդգրկում է ոչ միայն մարդկանց գործունեության առարկայական արդյունքները (մեքենաներ, տեխ. կառույցներ, արվեստի ստեղծագործություններ, իրավունքի և բարոյականության նորմեր ևն), այլև սուբյեկտիվ մարդկային ուժերն ու ընդունակությունները, որոնք իրականացվում են գործունեության մեջ (գիտելիքներ, ունակություններ, արտադրական և մասնագիտական հմտություններ, աշխարհայացք ևն): Մ., արտադրության հոգևոր և նյութական տեսակներին համապատասխան, բաժանվում է հոգևոր Մ-ի և նյութական Մ-ի: Նյութական Մ. ընդգրկում է ողջ նյութական գործունեությունը և դրա արդյունքները (աշխատանքի գործիքներ, կացարան, հագուստ, հաղորդակցության միջոցներ ևն): Հոգևոր Մ. ընդգրկում է գիտակցության, հոգևոր արտադրության ոլորտը (ճանաչողություն, բարոյականություն, դաստիարակություն, լուսավորություն, հասարակական գիտակցության ձևեր): Մարքսիստական տեսությունը ելնում է նյութական և հոգևոր Մ-ների օրգ. միասնությունից, ընդունում նյութական հիմքերի վճռորոշ դերը Մ-ի զարգացման գործում: Յուրաքանչյուր ֆորմացիայի հատուկ է Մ-ի որոշակի տիպ. ֆորմացիաների հերթափոխության հետ փոխվում են Մ-ի տիպերը, սակայն այդ փոփոխությունը կատարվում է առանց խզումի: Նոր ստեղծված Մ. ժառանգում է նախկին մշակութային նվաճումները՝ ներառելով դրանք հասարակական հարաբերությունների նոր համակարգի մեջ: Ելնելով տարբեր ժողովուրդների ու հասարակարգերի Մ-ների ձևերի բազմազանությունից, Մ-ի մարքսիստական տեսությունը հանդես է գալիս ընդդեմ որևէ Մ-ի բացարձականացման, մերժում *դիֆուզիոնիզմը*, մշակութային ռելյատիվիզմը:

Մ. համամարդկային և դասակարգային երևույթ է: Հակամարտ ֆորմացիաներին հատկանշական է մշակութային-պատմական պրոցեսի անհամաչափությունը, հասարակության մշակութային շերտավորման ուժեղացումը: Իշխող դասակարգի Մ. ետին պլան է մղում զանգվածների հոգևոր գործունեությունը, չնայած հենց այդ գործունեությունն էլ որոշում է ազգային Մ-ի նվաճումների համամարդկային բովանդակությունը: Բուրժ. հասարակության պայմաններում ազգային Մ-ում ուրվագծվում է երկու Մ.՝ տիրապետող բուրժ. Մ. և ճնշված զանգվածների դեմոկրատական ու սոցիալիստական Մ-ի տարրեր: Դասակարգային հասարակության մշակութային բևեռացումը ավելի ցայտուն է դրսևորվում կապիտալիզմի օրոք: Իշխող դասակարգերը ձգտում են զանգվածներին պարտադրել պարզունակ «զանգվածային մշակույթը», ի հակադրություն որի գնալով ուժեղանում են դեմոկրատական և սոցիալիստական Մ-ի զարգացման միտումները: Վ. Ի. Լենինը, զարգացնելով երկու Մ-ի մասին ուսմունքը, ընդգծում է տիրապետող, շահագործող Մ-ի դեմ պայքարող առաջադիմական Մ-ի տարրերի տարբերակման անհրաժեշտությունը:

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակը արմատական հեղաշրջում է հասարակության և նրա Մ-ի զարգացման մեջ: *Կուլտուրական հեղափոխության* ընթացքում ստեղծվում և հաստատվում է սոցիալիստական Մ., որը ժառանգում է հասարակության զարգացման նախորդ աստիճաններում ձեռք բերած արժեքավորը և նշանավորում է մարդկության մշակութային զարգացման որակապես նոր աստիճան: Հասարակական հարաբերությունների նոր ձևերով և մարքսիստական գիտ. աշխարհայացքով պայմանավորված սոցիալիստական հոգևոր Մ-ի հիմնական գծերն են՝ ժողովրդայնությունը, կոմունիստական *գաղափարականությունն* ու *կուսակցականությունը*, *կոլեկտիվիզմն* ու *հումանիզմը*, սոցիալիստական *հայրենասիրությունը* և *ինտերնացիոնալիզմը*: Սոցիալիստական պետության ողջ մշակութային-դաստիարակչական աշխատանքը, սոցիալիստական Մ-ի ստեղծման ու զարգացման գործը ղեկավարում է կոմունիստական կուսակցությունը: Սոցիալիզմի պայմաններում զարգանում են ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական Մ-ները, աճում է նյութական ու հոգևոր արժեքների փոխանակումը սոցիալիստական ազգերի միջև, որը նպաստում է կոմունիստական հասարակության ապագա միասնական համամարդկային Մ-ի ձևավորմանը: ՍՄԿԿ ծրագիրը նշում է, որ կոմունիզմի Մ.«...կմարմնավորի հասարակության հոգևոր կյանքի ամբողջ բազմազանությունը և հարստությունը, նոր աշխարհի բարձր գաղափարայնությունը և հումանիզմը: Դա կլինի անդասակարգ հասարակության, համաժողովրդական, համամարդկային կուլտուրա» (1974, էջ 204):

*Գրկ.* Լենին Վ. Ի., Ո՞ր ժառանգությունից ենք մենք հրաժարվում, Երկ. լիակտ. ժող., հ. 2: Նույնի, Կուսակցական կազմակերպություն և կուսակցական գրականություն, նույն տեղում, հ. 12: Նույնի, Պրոլետարական կուլտուրայի մասին, Երկ., հ. 31: Маркс К. и Энгельс Ф., Соч., 2 изд. (ըստ առարկայացանկի): Ковалев С. М., Социализм и культурное наследие, М., 1967; Маркарян Э. С., Очерки теории культуры, Е., 1969; Методологические проблемы исследования этнических культур: Материалы симпозиума, Е., 1978; Философские проблемы культуры. Материалы Закавказского симпозиума по теории культуры, Тб., 1980.

**«ՄՇԱԿՈՒՅԹ»**, արվեստի և գրականության պարբերագիրք: Լույս է տեսել 1967, 1970-ին (ընդամենը՝ 5 գիրք), Դամասկոսում: Խմբագիր-հրատարակիչ՝ Ա. Նաճարյան: Սփյուռքահայության առաջնահերթ խնդիրն է համարել ազգապահպանումն ու կապերի ամրապնդումը Սովետական Հայաստանի հետ: Ներկայացրել է սփյուռքի ստեղծագործողներին, հայ սովետական գրողներին ու արվեստագետներին: Տեղ է հատկացրել արաբ. գրականությանը: «Մ.» անդրադարձել է Սովետական Հայաստանի 50-ամյակի տոնակատարություններին, նրա կեսդարյա հաջողություններին:

*Տ. Վարդանյան*

**«ՄՇԱԿՈՒՅԹ»**, գրական հանդես: Լույս է տեսել 1954—55-ին, Բեյրութում: Տես *«Էջեր գրականության և արվեստի»*:

**«ՄՇԱԿՈՒՅԹ»**, երիտասարդական գրական հրատարակություն: Լույս է տեսել 1935—37-ին (10 համար), Փարիզում: Խմբագիր-հրատարակիչներ՝ Ա. Սեմա (Գ. Աթմաճյան), Պ. Զարրյան: Ունենալով հակաֆաշիստական ուղղություն՝ անդրադարձել է գրականության ժողովրդայնության հարցերին, գաղութահայության ճակատագրին ու հայրենադարձությանը (Սեմայի «Սև ու ճերմակ» հրապարակախոսական ակնարկաշարը): Զգալի տեղ է հատկացրել արվեստի և մշակույթի խնդիրներին, տպագրել թարգմանություններ (Բոդլեր, Կիպլինգ, Ջեգերս, Բրեխտ և ուրիշներ): Պարբերականին աշխատակցել են Վ. Շուշանյանը, Բ. Թոփալյանը, Զ. Որբունին, Մ. Աթմաճյանը, Հ. Բալույանը, Ա. Տատրյանը, Գ. Քերեսթեճյանը և ուրիշներ:

*Մ. Բաբլոյան*

**«ՄՇԱԿՈՒՅԹ»**, ազգագրական տարեգիրք: «Մշակույթ» գրատան հրատարակություն: Լույս է տեսել 1948-ին, Ստամբուլում: Խմբագիր-հրատարակիչ՝ Թ. Ազատյան: Տպագրել է հայագիտական, պատմագիտական հոդվածներ, դրվագներ Դ. Վարուժանի, Ե. Օտյանի, Հ. Պարոնյանի կյանքից, նրանց անտիպ նամակները, ինչպես նաև Կոմիտասի, Սիամանթոյի, Ռ. Սևակի ձեռագրերը: Անդրադարձել է Գ. Զոհրապի, Հ. Ասատուրի և ուրիշների նամակներին ու գրագրություններին:

**ՄՇԱԿՈՒՅԹ ՀՆԱԳԻՏԱԿԱՆ**, *հնագիտության* հիմնական հասկացություններից մեկը. միևնույն ժամանակաշրջանի, տեղական առանձնահատկություններով տարբերվող և որոշակի տարածքում կենտրոնացված *հնագիտական հուշարձանների* ընդհանրություն: Մ. հ. տարբերվում է նույն կարգի այլ ընդհանրություններից և համապատասխանում անցյալի սոցիալ-մշակութային որևէ համակարգի: Առաջանում է, երբ գործող «կենդանի» մշակույթը «մահանում» է, մարդկային գործունեության առարկաներն ընդմիշտ կորցնելով կիրառական նշանակությունը՝ դառնում են մշակույթի (հնագիտական) հուշարձաններ, որոնց իրական ֆունկցիան բացահայտվում է վերակազմական ուսումնասիրության ընթացքում: Երկրագնդի հնագիտական բոլոր հուշարձանների ընդհանրությունը կարող է դիտվել իբրև մի ընդհանուր Մ. հ.: Սակայն հնագիտական հետազոտությունների պրակտիկայում Մ. հ. ասելով ամենից հաճախ հասկանում են հնագիտական հուշարձանների մի ամբողջություն, որի մեջ ընդգրկված հուշարձանները իրար նմանվում են կրկնվող մի շարք հաստատուն հատկանիշներով, որոնցով էլ՝ տարբերվում են համապատասխան այլ խմբերից: Մ. հ. բնութագրվում և տարբերակվում է ոչ թե առանձին, այլ մի խումբ յուրահատուկ հատկանիշներով: Առանձին դեպքերում հաջողվում է բացահայտել Մ. հ-ի համապատասխանությունը տնտեսական-մշակութային տիպին, պատմաազգագրական մարզին: Ենթադրվում է, որ ճիշտ տարբերակված Մ. հ. առավելապես համապատասխանում է պատմաազգագրական մարզերի տիպաբանական որևէ ստորաբաժանման: Մ. հ-ները, որպես կանոն, անվանվում են ըստ այն հուշարձանախմբի կամ տարածքի, որտեղ տվյալ մշակույթը տարբերակվել է առաջին անգամ (օրինակ, Տրիպոլյան մշակույթ՝ Տրիպոլիե գյուղից ևն) և ըստ առարկայական հատկանիշների, որ բնորոշ են որոշակի խմբի (օրինակ, զանգաձև գավաթների մշակույթ, կատակոմբային մշակույթ ևն):

*Գրկ.* Каменицкий И. С., Археологическая культура-ее определение и интерпретация, «Советская археология», № 2, 1970. Клейн Л. С., Проблема определения археологической культуры, նույն տեղում:

*Գ. Արեշյան*

**ՄՇԱԿՈՒՅԹԻ ՊԱԼԱՏՆԵՐ ԵՎ ՏՆԵՐ** ՍՍՀՄ-ում, խոշոր *ակումբային հիմնարկներ*, որոնք նպաստում են աշխատավորների կոմունիստական դաստիարակության, կուլտուրական մակարդակի բարձրացման և ազատ ժամանակի կազմակերպման գործին: Մ. պ. և տ. ունեն դահլիճներ, ստացիոնար կինոսարքավորումներ, գրադարաններ, կազմակերպում են ցուցահանդեսներ, դասախոսություններ, թեմատիկ երեկոներ, փառատոներ, հանդիպումներ անվանի մարդկանց հետ, գործում են մանկական սեկտորներ: Մ. պ. և տ-ի գործունեությունը նպաստում է ժող. ստեղծագործության և գեղարվեստական ինքնագործունեության զարգացմանը: Նրանցում ձևավորվում են ժող. թատրոններ, նվագախմբեր, պարարվեստի կոլեկտիվներ, երգչախմբեր, երգի և պարի անսամբլներ: Մ. պ. և տ-ի հիմքի վրա է աշխատում *ժողովրդական համալսարանների* մեծ մասը:



Մշակույթի պալատ Ղափանում (1972—79, ճարտ-ներ՝ Ս. Գուրզադյան, Կ. Մատինյան, Մ. Մուրզա)

Շրջանային, քաղաքային և գյուղական կուլտուրայի տները պետ. ակումբային հիմնարկներ են և մտնում են ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրության համակարգի մեջ: Արհմիութենական կազմակերպությունների Մ. պ. և տ. ստեղծվում են արհմիութենական ֆաբրիկա-գործարանային կոմիտեների (տեղական) կողմից և պահվում նրանց միջոցներով: Ստեղծագործական և գիտական մտավորականության տները (արվեստի, լուսավորության աշխատողների) գտնվում են համապատասխան արհմիությունների կենտկոմների տնօրինության տակ: Մ. պ. և տ. են կազմակերպվում նաև կոլտնտեսությունների միջոցներով: ՍՍՀՄ-ում գործում են նաև սպայի տներ, պիոներների և դպրոցականների տներ և պալատներ: Մ. պ. և տ. ղեկավարում են ընտրովի հասարակական միությունները կամ սովետները: ՀՍՍՀ-ում 1979-ին գործել են 1219 Մ. պ. և տ. ու ակումբային հիմնարկ:

Մ. պ. և տ. բաղկացած են հանդիսատեսային, ակումբային (մեծահասակների և մանուկների), մարզական և հանգստի մասերից՝ կազմելով մեկ ընդհանուր համալիր: Առաջին խոշոր Մ. պ. և տ., որ կոչվել են բանվորական, կառուցվել են 1920-ական թվականներից սկսած: Նշանավոր են Մոսկվայում՝ Ռուսակովի անվ. (1928) և Ավտոգործարանի (1934), Լենինգրադում՝ Գորկու անվ. (1927) և Կիրովի անվ. (1937), Խարկովում՝ Երկաթուղայինների (1937), Բաքվում՝ Շահումյանի անվ. (1939) և այլ մշակույթի պալատները:

ՀՍՍՀ-ում առաջին Մ. պ. և տ-ից է Երևանի Կառուցողների ակումբը (1936, ճարտ-ներ՝ Կ. Հալաբյան, Մ. Մազմանյան, Գ. Քոչար): 1950—60-ական թթ. կառուցվել են հիմնականում ակումբատիպ Մ. պ. և տ., որոնցից են Երևանում՝ Ալյումինագործների (1957, ճարտ. Ս. Մանուկյան) և Կիրովի անվ. գործարանի (1962, ճարտ-ներ՝ Ռ. Ալավերդյան, Ռ. Իսրայելյան, Զ. Խանամիրյան), Էջմիածին քաղաքի (1955, ճարտ. Ս. Մանուկյան), Կիրովականում՝ Քիմիագործների (1950—53, ճարտ-ներ՝ Ճ. Ազատյան և Ռ. Ալավերդյան) մշակույթի պալատները: 1970-ական թվականներից սկիզբ է դրվել լիակազմ Մ. պ. և տ-ի նախագծմանն ու շինարարությանը՝ Սևանում, Եղեգնաձորում, Մարալիկում (1966—76, ճարտ-ներ՝ Մ. Միքայելյան, Զ. Սիմոնյան), Ղափանում և Գորիսում (1972—79, ճարտ-ներ՝ Ս. Գուրզադյան, Կ. Մատինյան, Մ. Մուրզա), Աբովյանում (1978, ճարտ. Լ. Չերքեզյան) ևն:

**ՄՇԿԱՅԾՅԱՄ** (Moschus moschiferus), մըշկայծյամների ընտանիքի երկամբակավոր կաթնասուն կենդանի: Մարմնի երկարությունը մինչև 1 *մ* է, մնդավի բարձրությունը՝ 70 *սմ*, քաշը՝ 17 *կգ*: Ետին վերջավորությունները երկար են առջևիններից: Գլուխը փոքր է, ականջները՝ մեծ, եղջյուրներ չունի: Արուները վերին ծնոտում ունեն երկար ժանիքներ, որոնք կախվում են կզակից ցած: Պոչը կարճ է: Արուները փորի վրա ունեն մուշկ արտադրող հատուկ գեղձ: Մորթին բաց դարչնագույնից մուգ դարչնագույն է, սպիտակ բծերով: Տարածված է Ասիայում (Ալթայ, Արևելյան Սիբիր, Հեռավոր Արևելք, Արևելյան Չինաստան, Արևելյան Տիբեթ): Ապրում է քարքարոտ լեռնային տայգաներում: Սնվում է բուսականությամբ, առավելապես ծառերի քարաքոսներով: Էգը ծնում է 1—2 ձագ: Արդյունագործական նշանակությունը սահմանափակ է: Որսում են մուշկի համար, որն օգտագործվում է օծանելիքի արդյունաբերության մեջ:

**ՄՇԿԱՎԱՆՔ**, Մշակավանք, XIII դարի հայկական ճարտարապետական համալիր: Գտնվում է ՀՍՍՀ Նոյեմբերյանի շրջանի Կողբ գյուղի մոտ, անտառապատ բարձրադիր սարահարթի վրա: Պահպանվել են Ս. Աստվածածին եկեղեցին և ըն-

բան արմ-ից կից գավիթը: Կառուցման ճշգրիտ ժամանակը հայտնի չէ: Մ-ի եկեղեցին 1219-ին հիշատակվում է իբրև կանգուն շինություն («Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի լուսաբանեալ», Վենետիկ, 1862, էջ 141): Եկեղեցին հատակագծում քառակուսի միանավ դահլիճ է, ծածկված կիսագլանային թաղով: Կիսաշրջանագծային աբսիդին երկու կողմից կից են երկհարկ նեղ ավանդատներ (երկրորդ հարկ բարձրանում են աբսիդի եզրերից բացվող քարե աստիճաններով): Երկայնական ճակատներին կան մեկական կլոր պատուհան: Արլ. ճակատում, աբսիդի պատուհանից վերև, ոճավորված խաչ է, որի վերին թևում պատկերված է ցուլի գլուխ: Միակ՝ արմ. մուտքը բացվում



Մշկավանքի գավթի ներքին տեսքը

է դեպի գավիթ: Այն վերարտադրում է փոխհատվող զույգ կամարների համակարգով անսյուն կենտրոնակազմ գավիթների հորինվածքը, արմ-ից երկարացված լրացուցիչ տարածությամբ (ինչպես Հաղպատի, Գանձասարի գավիթներում): Վերջինս գավթի քառակուսի մասից բաժանված է կլոր հատվածքի զույգ զանգվածեղ սյուներով: Փոխհատվող զույգ կամարների կառուցվածքային հնարքը կիրառված է նաև գավթի կենտրոնական մասի ծածկում: Մուտքը արմ-ից է, պսակված հեռանկարային շքամուտքով, որը երիզված է բազմագույն ձևավոր քարերով զարդարված շրջանակով: Մ-ի համալիրը հարուստ է խաչքարերով և վիմական արձանագրություններով: Շուրջը հին գերեզմանատուն է: Վերականգնվել է 1955—60-ին:

*Գրկ.* Якобсон А. Л., Из истории армянского средневекового зодчества. Монастыри XIII в. Хоракерт и Мшкаванк, «Советская археология», XIV, 1950.

*Ա. Յակոբսոն, Գ. Շախկյան*

Մշկավանքը հարավ-արևելքից



**ՄՇԿՆՈՑ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Սեբաստիայի վիլայեթի Շապին-Գարահիսար գավառում: 1914-ին ուներ մոտ 60 տուն հայ բնակիչ, զբաղվում էին երկրագործությամբ, անասնապահությամբ և արհեստներով: Կար եկեղեցի և նախակրթական վարժարան: 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ, բնակիչների մեծ մասին ողջակիզել են հայրենի գյուղում: Սակավաթիվ փրկվածներն անցել են Արևելյան Հայաստան, Կովկաս և այլուր:

**ՄՇՈ ԱՌԱՔԵԼՈՑ ՎԱՆՔ**, Ս. Ղազարի վանք, Տիրինկատարի վանք, Ս. Թադևոս, Թարգմանչաց վանք, միջնադարյան հայկական վանքային համալիր, Մուշից մոտ 4 *կմ* հարավ: Ըստ ավանդության հիմնել է Գրիգոր Լուսավորիչը, առաքյալների՝ Հռոմից բերված մասունքների վրա: Հայտնի է դարձել XI դարից, բարգավաճել՝ XII դ.: Ըստ վանքի խաչքարերից մեկի արձանագրության, այն նորոգվել է 1125-ին: XIV դ. վերջին խիստ ավերվել է Լենկթեմուրի արշավանքների ժամանակ: XV—XVI դդ. դարձել է գրչության նշանավոր և գործուն կենտրոն: 1614-ին վանքը վերստին նորոգվել է, իսկ 1663-ին վերակառուցվել է գլխավոր եկեղեցու գմբեթը: Համալիրի շենքերն ավերվել են 1895-ին և առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ: Գլխավոր՝ Ս. Առաքելոց եկեղեցին (XI դ.), ամբողջովին աղյուսաշեն է, ունի ներքուստ խաչաձև՝ չորս անկյուններում երկհարկ, թաղակապ ավանդատներով, արտաքուստ ուղղանկյուն հորինվածք: Գմբեթն ունեցել է դրսից ութանիստ, ներսից բրգաձև թմբուկ: Միակ՝ արմ. դուռը բացվում է դեպի կից, քարաշեն, չորս մույթերով, ուղղանկյուն հատակագծով գավիթը (1555), որն ըստ արձանագրության կառուցել է վանահայր Կարապետ Բաղիշեցին: Գավթի արմ. մուտքի առջև Հովհաննես վարդապետը 1791-ին կառուցել է եռահարկ զանգակատուն՝ ութսյուն ռոտոնդայով: Ս. Առաքելոց եկեղեցուն հվ-ից կից է 1663-ին կառուցված (XIV դ. ավերված շենքի հիմքերի վրա) Ս. Ստեփանոս միանավ, թաղածածկ, քարաշեն եկեղեցին, իսկ հս-ից կից Ս. Գևորգ եկեղեցու միայն հետքերն են նշմարվում: Համալիրի արլ. կողմում կա XI դ. արձանագրություններով, նրբահյուս զարդաքանդակներով 9 խաչքար: Վանքը շրջապատված է եղել պարսպով (1791): Հիմնական հուշարձանախմբից մոտ 300 *մ* արլ. կանգուն է համեմատաբար լավ պահպանված Ս. Թադևոս (XI—XII դդ.) գմբեթավոր ոչ մեծ եկեղեցին: Գմբեթատակ քառակուսուց անցումը դեպի ութանիստ թմբուկով գմբեթն իրականացված է տրոմպներով: Եզակի է կառուցողական տեխնիկան՝ եկեղեցու պատերի արտաքին երեսները շարված են սրբատաշ տուֆի քարերից, իսկ ներսը՝ աղյուսից: Միջնադարյան Հայաստանի կիրառական արվեստի լավագույն նմուշներից է Մ. Ա. վ-ի փայտե դուռը (1134, քանդակազարդող վարպետ՝ Ղուկաս): Նրա փեղկերը ծածկված են երկրաչափական, շրջանակի կողերը՝ կենդանակերպ զարդանախշերով, իսկ բարավորը՝ հեծյալների բարձրարվեստ հարթաքանդակներով:



Մշո Առաքելոց վանքի ընդհանուր տեսքը




Մշո Առաքելոց վանքի հատակագիծը

*Գրկ.* Thierry I. M., Le couvent des Saints-Apôtres de Mus, «ՀՍ», 1976, № 1—12

*Մ. Հասրաթյան*

**ՄՇՈ ԱՌԱՔԵԼՈՑ ՎԱՆՔԻ ԴՊՐՈՑ**, վանքում մշակութային կյանքն սկսվել է դեռևս հիմնադրման օրից: V դ. այստեղ կատարվել են թարգմանություններ: Աշխուժացում է ապրել XI դ. վերջերին և XII դ. սկզբներին՝ մատենագիր և ուսուցիչ Պողոս Տարոնացու օրոք: Դպրոցը իր ծաղկմանն է հասել 1271—81-ին, երբ *Ներսես Մշեցին* Վարդան Արևելցու մահից հետո Խոր Վիրապից այստեղ է տեղափոխել Հայոց վարդապետարանը: Մ. Ա. վ. դ. ուսանելու են եկել Հայաստանի տարբեր վայրերից, նույնիսկ Կիլիկիայից: Հավանաբար 1282-ին *Մշո Առաքելոց վանքից* Հայոց վարդապետարանը տեղափոխվել է Վայոց ձորի Աղբերց վանք, ուր հետագայում ստեղծվել է *Գլաձորի համալսարանը*: Մ. Ա. վ. դ-ից մեզ ձեռագրեր են հասել Ներսես Մշեցու, նրա աշակերտ Եսայի Նչեցու, Բարսեղի, Լուսերի, Ստեփանոսի, ինչպես նաև հետագայում այստեղ գործած մի քանի տասնյակ գրիչների ընդօրինակություններով: Բազմաթիվ ընդօրինակություններ են կատարվել 1205—1915-ը վանքում պահպանված «*Մշո ճառընտիր*»-ից:

**ՄՇՈ ԲԱՐԲԱՌ**, հայերենի բարբառ: Ըստ ձևաբանական դասակարգման պատկանում է «կը» ճյուղին, ըստ բազմահատկանիշ վիճակագրական դասակարգման արևմտյան խմբակցության հարավ-կենտրոնական բարբառախմբին: Խոսվել է Մշո դաշտում և հարակից վայրերում (Խնուս, Ալաշկերտ, Մանազկերտ, Արծկե, Արճեշ, Խլաթ, Բաղեշ): Ունի խոսվածքային տարբերություններ: Ձայնավոր հնչյուններն են՝ **ա, է, ը, ի, օ, ու**, որոնց խոսվածքներում

յոց ազգագրական ընկերություն, ապա՝ Երևան: Այժմ պահվում է Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանում (ձեռ. № 7729):

*Ա. Մաթևոսյան*

Պատկերազարդումը տես 633-րդ էջից առաջ՝ ներդիրում:

**ՄՇՈ Ս. ԿԱՐԱՊԵՏ ՎԱՆՔ**, Մ շ ո ս ու լ-թ ա ն Ս. Կ ա ր ա պ ե տ, Գ լ ա կ ա-վ ա ն ք, Ի ն ն ա կ ն յ ա ն վ ա ն ք, հայկական ճարտարապետական հուշարձան, վանքային համալիր Հայաստանի Տարոն գավառում, Մուշ քաղաքի հս-արմ. կողմում, Աշտիշատ ավանից ոչ հեռու (արմ. կողմում), Քարքե լեռան հվ-արլ. լանջին: Նախապես եղել է Գիսանե և Դեմետր հեթանոսական կուռքերի մեհենատեղին, որն ըստ ավանդության, կործանել է Գրիգոր Լուսավորիչը, տեղում հիմնել վանք, այնտեղ զետեղելով Ս. Կարապետի և Աթանագինես եպիսկոպոսի նշխարները, առաջին վանահայր նշանակել *Զենոբ Գլակին*, որի անունով և հետագայում կոչվել է վանքը: Այն անվանվել է նաև Իննակնյան՝ ինը աղբյուրների մոտ կառուցված լինելու պատճառով: Զենոբ Գլակը հավաստում է, որ Գրիգոր Լուսավորիչը վանքին է նվիրել նախկին մեհյանի տիրույթները: VII դ. վանքի կալվածներն ընդարձակվել են: Նույն դ. վանքը հիմնովին ավերվել է երկրաշարժից, ապա վերաշինվել, կառուցվել է նրա գլխավոր (Ս. Ստեփանոս) եկեղեցին: XI դ. կեսին *Գրիգոր Մագիստրոս Պահլավունին* վանքում կառուցել է տվել ապարանք, որը սակայն այրվել է 1058-ին, վանքի Ս. Գրիգոր փայտակերտ եկեղեցու հետ: XVI դ. կեսին կառուցվել է վանքի Ս. Կարապետ եկեղեցին: XVI—XVII դդ. թուրք-պարսկական պատերազմների ժամանակ վանքը դարձել է կոտորածից խույս տված բազմաթիվ հայերի ապաստան: 1750-ական թթ. հիշյալ եկեղեցին այրվել է պարսից զինվորների ձեռքով: 1763—1764-ին վանքի վանահայր Հովնանը մտահղացել է ազատագրական պայքար կազմակերպել Արևմտյան Հայաստանում և այդ նպատակով կապեր է հաստատել Վրաստանի Հերակլ II թագավորի և Հովսեփ *Էմինի* հետ: XVIII դ. վանքը խիստ տուժել է երկրաշարժերից: Հատկապես ավերիչ էր 1784-ի երկրաշարժը, որից փլվեցին վանքի կաթողիկե եկեղեցին, սեղանատունը՝ միաբանների խցերով հանդերձ, զանգակատան մի մասը, հվ. կողմի պարիսպները ևն: 1788-ին վանքը հիմնովին վերակառուցվել է, ավելի է ընդարձակվել (գավթի հաշվին), նորոգվել են զանգակատունը, խորանը ևն: Համալիրը բաղկացած է եղել մենաստանից և եկեղեցուց: Առաջինը հատակագծում ուղղանկյուն կառույց էր, պարսպապատ, ուներ միաբանների երկհարկ բնակարաններ և բարձր պատով անջատված ուխտավորների սենյակախումբ: Եկեղեցին քառակուսի հատակագծով էր, ուներ 16 սյունանի դահ, արմ-ից՝ 1787-ին կառուցված նախամուտք-զանգակատուն: Արլ. հատվածը բաղկացած էր չորս, իրար հաջորդող տարբեր տիպերի (կենտրոնի երկուսը հատակագծում խաչաթև, գմբեթածածկ կառույցներ էին, ծայրամասերինը՝ միանավ, թաղածածկ բազիլիկներ) եկեղեցի-վկայարաններից: Հնագույնը (IV դ. սկիզբ) Ս. Կարապետի վկայարանն էր:

1827-ին վաչկատուն քրդերի մի հրոսախումբ գրավել է վանքը, թալանել ու ոչնչացրել կահ-կարասին, շատ ձեռագիր հուշարձաններ: Սակայն վանքի ազդեցությունը գնալով աճել է (հատկապես 1860—1880-ական թթ., երբ այնտեղ վանահայր են եղել Խրիմյան Հայրիկը և Գարեգին Սրվանձտյանցը): 1896-ից վանքին կից բացվել է որբանոց և դպրոց՝ 45 աշակերտով, գրադարան: XIX դ. և XX դ. սկզբին վանքն ունեցել է ընդարձակ եկեղեցաթեմ, որն ընդգրկում էր Տարոն, Վարդո, Ճապաղջուր, Խնուս, Բուլանըխ, Կեղի և այլ գավառների հայաբնակ բնակավայրերը: Վանքը ստանում էր ընդարձակ հասույթներ, գյուղացիներից գանձում էր պտղի հարկ, հարստանում զանազան նվիրատվությունների հաշվին: Վանքը եղել է հայկ. գրչության կենտրոն, ուր ստեղծվել են բազմաթիվ արժեքավոր ձեռագրեր: Հայաստանի հոգևոր կենտրոնների մեջ իր դերով ու նշանակությամբ եղել է երկրորդը (Էջմիածնից հետո): Հնուց կոչվել է մենաստանների «մայրաքաղաք»: Այն նշանավոր ուխտատեղի էր (նաև արևելահայերի համար): Մեծ տոնախմբություններ էին կատարվում հատկապես Վարդավառի և Աստվածածնի վերափոխման տոներին, երբ տեղի էին ունենում նաև աշխարհիկ հանդեսներ (ձիամրցումներ, լարախաղացություններ, գուսանների մրցույթներ ևն): Մշո սուլթան Ս. Կարապետը համարվել է ամենակարող, «մուրազատու», «բուժեն» է մարդկանց ֆիզիկական արատները, ամեն տեսակի, ներառյալ նաև արվեստի՝ շնորհի պարգևել: Ժող. բանահյուսության մեջ պահպանվել են Ս. Կարապետին նվիրված, երգվող ամբողջական «դաստաններ» (տես *Ուխտագնացության երգեր*): Տոնահանդեսների օրերին վանքի բակում կազմակերպվել են նաև տոնավաճառներ: Վանքի պարսպի աջ կողմում կար մի աղբյուր՝ Ս. Լուսավորիչ անունով: Ջուրը լցվում էր քառակուսի ավազանի մեջ, որը ըստ ավանդության, կառուցել է տվել Հայոց թագավոր Տրդատ Մեծը, իսկ Գրիգոր Լուսավորիչը այնտեղ մկրտել է բազում քրիստոնյաների: Վանքը մեծ արհավիրքների է ենթարկվել 1915-ին և 1918-ին: Մեծ եղեռնի օրերին Տարոնի հայության մի զգալի մասը ապաստանել է վանքում և մոտակայքի անտառում, երկու ամիս դիմադրել թշնամու գերակշիռ ուժերին: Հաջողվել է պահպանել վանքում եղած արժեքավոր հուշարձանները, այդ թվում և 1750 ձեռագիր, որոնք 1916-ին, երբ ռուս. զորքը և հայ կամավորական ջոկատները գրավել են Տարոնը, հաջողվել է տեղափոխել Էջմիածին: Վանքն այժմ ավերված է:



Մշո Ս. Կարապետ վանքը




Մշո Ս. Կարապետ վանքի հատակագիծը

*Գրկ.* Հ ո վ ի ա ն Մ ա մ ի կ ո ն յ ա ն, Պատմութիւն Տարօնոյ, Ե., 1941: Ս ա ր գ ի ս յ ա ն Ն., Տեղագրութիւնք ի Փոքր և ի Մեծ Հայս, Վնտ., 1864, էջ 228—230: Լ ու ս ա ր ա ր յ ա ն Կ., Գաւազանագիրք յաջորդութեանց վանահարց ուխտիս Ս. Կարապետի Տարօնոյ, Երուսաղեմ, 1912: Ո ս կ յ ա ն Հ., Տարոն—Տուրուբերանի վանքերը, Վնն., 1953:

*Վ. Վարդանյան, Ա. Զարյան*

**ՄՇՈԳԵՏ**, գետ Արևմտյան Հայաստանում: Տես *Մեղրագետ*:

**ՄՇՎԵԼԻՁԵ** Շալվա Միքայելի [ծն. 15(28). 5.1904, Թիֆլիս], վրացի սովետական կոմպոզիտոր: Վրաց. ՍՍՀ ժող. արտիստ (1958): ՍՄԿԿ անդամ 1947-ից: 1930-ին ավարտել է Թիֆլիսի կոնսերվատորիան (Մ. Մ. Բագրինովսկու կոմպոզիցիայի դասարան), որտեղ և դասավանդում է 1929-ից (1942-ից՝ պրոֆեսոր): 1942—52-ին եղել է Վրաստանի կոմպոզիտորների միության վարչության նախագահ: Գրել է «Ասք Տարիելի մասին» (1946), «Մեծ վարպետի աջը» (1961) օպերաները, 5 սիմֆոնիա, օրատորիաներ, սիմֆոնիկ պոեմներ, սյուիտներ երգեր, երաժշտություն դրամատիկական ներկայացումների ու ֆիլմերի համար:

Հավաքել է վրաց. ժող. երգեր: ՍՍՀՄ (1942, 1947) և Վրաց. ՍՍՀ (1971) պետ. մրցանակներ, 1973-ին՝ Զ. Ներոնի անվ. հնդ. պետ. մրցանակ:

**ՄՇՏԱԴԱԼԱՐ ԲՈՒՅՍԵՐ**, ամբողջ տարին կանաչ տերևներով պատված բույսեր: Մ. բ-ի տերևաթափը, ինչպես նաև նոր տերևների առաջացումը տեղի են ունենում աստիճանաբար կամ պարբերաբար (յուրաքանչյուր տերև կարող է ապրել մինչև մի քանի տարի): Կազմում են արևադարձային երկրների բույսերի մեծամասնությունը, շատ են նաև մերձարևադարձային շրջաններում (դափնի, նվենի, դափնեվարդ, ձիթենի, մագնոլիա, թզենի, նոճի, ցիտրուսներ, որոշ կաղնիներ ևն): Բարեխառն և ցուրտ գոտիներում Մ. բ. են փշատերև ծառերը (սոճի, եղևնի, եղևին ևն), մի շարք կիսաթփեր (ցաքի, հապալասենի, լոռամրգի) և որոշ խոտաբույսեր: Արևադարձային և մերձարևադարձային շրջաններում Մ. բ-ի ֆոտոսինթեզն ընթանում է ամբողջ տարին, իսկ բարեխառն գոտում ձմռանն ընդհատվում է, նվազագույնի է հասնում գոլորշիացումը, տերևներում օսլայի փոխարեն գոյանում են շաքարներ կամ յուղ, որոնք կանխում են բջիջների սառեցումը, բարձրացնում ցրտադիմացկունությունը: Մ. բ. պետք է տարբերել ձմռականաչ բույսերից, որոնց տերևները ձմեռելուց հետո չորանում են և փոխարինվում նորերով:

**ՄՇՈՒՇ**, օդի մթագնում նրանում կախված վիճակում գտնվող պինդ մասնիկների (ծուխ, այրուք, փոշի) առկայությունից: Մ. նվազեցնում է տեսանելիությունը մինչև 1 *կմ*, իսկ մեծ ինտենսիվության ժամանակ՝ մինչև հարյուրավոր ու տասնյակ մետրեր: Մ. նկատվում է տափաստաններում, անապատներում և այն շրջաններում, որտեղ տափաստաններից ու անապատներից թափանցում են օդային զանգվածներ: Ուժեղ Մ. ուղեկցում է *խորշակին*: Մեծ քաղաքների վրա Մ. է դիտվում օդը ծխով ու փոշով աղտոտվելիս:

**«ՄՈԲԻԼ ՕՅԼ»**, ամերիկյան նավթային ընկերություն: Տես *Մոնոպոլիա կապիտալիստական* հոդվածի Ա ր դ յ ու ն ա բ ե ր ա կ ա ն  մ ո ն ո պ ո լ ի ա ն ե ր բաժինը:

**ՄՈԲԻԼԻԶՄ** (< լատ. mobilis — շարժուն), հիպոթեզ, որը ենթադրում է երկրակեղևի (լիթոսֆերայի) մայրցամաքային խոշոր բեկորների հորիզոնական զգալի (մինչև մի քանի հզ. *կմ*) տեղաշարժերը միմյանց և բևեռների նկատմամբ՝ երկրաբանական ժամանակի ընթացքում: Մ. հակադրվում է ֆիքսիզմին (հիպոթեզ, որը ժխտում է այդպիսի տեղաշարժերը և երկրակեղևի զարգացումը հիմնականում պայմանավորում ուղղաձիգ շարժումներով): Մայր ցամաքների տեղաշարժման մասին ենթադրություններ արվել են տակավին XIX դ., սակայն Մ-ի գիտականորեն մշակված հիպոթեզը առաջին անգամ ձևակերպել է գերմանացի երկրաֆիզիկոս Ա. Վեգեները (մայր ցամաքների դրեյֆի տեսություն): Մ-ի ժամանակակից տարբերակը՝ «նոր գլոբալ տեկտոնիկան» (կամ սալերի տեկտոնիկան), գլխավորապես հիմնված է օվկիանոսների հատակի ռելիեֆի և մագնիսական դաշտերի ուսումնասիրության, ինչպես նաև *հնէամագնիսականության* տվյալների վրա:

**ՄՈԲՈՒՏՈՒ ՍԵՍԵ ՍԵԿՈ**, լիճ Արևելյան Աֆրիկայում, մինչև 1973-ը՝ *Ալբերտ* լիճ:

**ՄՈԳԱԴԻՇՈ**, Մ ո գ ա դ ի շ ու (Mogadiscio, Mogadishu), Սոմալիի Դեմոկրատական Հանրապետության մայրաքաղաքը, Բենադիր մարզի վարչական կենտրոնը: 600 հզ. բն. (1979): Գտնվում է Հնդկական օվկիանոսի ափին: Երկրի գլխավոր նավահանգիստն է, ավտոճանապարհների հանգույցը: Ունի օդանավակայան: Կա սննդի, կաշվի-կոշիկի, փայտամշակման արդյունաբերություն: ՍՍՀՄ օգնությամբ կառուցվել է կաթի վերամշակման գործարան: Մ-ում կան Ազգային համալսարան, կոլեջներ, Ազգային գրադարան, թանգարան: Հիմնադրել են արաբ. գաղութարարները՝ IX—X դդ.:

**ՄՈԳԱՐ** (Setaria italica subssp. mocharicum Al), ի տ ա լ ա կ ա ն  կ ո ր ե կ ա խ ո տ, չ ու մ ի զ ա, դաշտավլուկազգիների ընտանիքի միամյա բույս: Արմատային համակարգը փնջաձև է, թափանցում է մինչև 1,0 *մ*: Ցողունի բարձրությունը 50—150 *սմ* է, ծաղկաբույլը՝ հասկանման հուրան, սև, դեղին, սպիտակ: 1000 հատիկի կշիռը՝ 1,5—3,0 *գ*: Մ. օգտագործվում է կերի և պարենի համար: Մշակվում է մերձարևադարձային և բարեխառն գոտու երկրներում: Վայրի վիճակում աճում է Ասիայում: ՍՍՀՄ-ում՝ Ուկրաինայում, Հյուսիսային Կովկասում, Մոլդավիայում, Ղազախստանում, Արևմտյան Սիբիրում, Միջին Ասիայում մշակվում է խոտի, կանաչ կերի և որպես արոտավայրային բույս: Մ-ի հատիկները ծլում են 8—10°C-ում, ծիլերը տուժում են —2°—3°C սառնամանիքներից: Չորադիմացկուն է: Նպաստավոր պայմաններում հնձվում է երկու անգամ: 100 *կգ* կանաչ զանգվածը համապատասխանում է 17, խոտը՝ 55 կերային միավորի: Բերքատվությունը՝ 200—250 *ց/հա*: Տարածված սորտերն են՝ Դնեպրոպետրովսկի 11, Օմսկի 10 ևն:

**ՄՈԳԻԼՅՈՎ**, քաղաք, Բելոռուսական ՍՍՀ Մոգիլյովի մարզի կենտրոնը: 300 հզ. բն. (1980): Խճուղային և երկաթուղային ճանապարհների հանգույց է, գետային նավահանգիստ: Տալիս է մարզի արդ. արտադրանքի մոտ կեսը: Կարևոր ճյուղերն են մետաղամշակումը և մեքենաշինությունը, քիմ. արդյունաբերությունը: Զարգացած է սննդի, թեթև արդյունաբերությունը, շինանյութերի արտադրությունը, փայտամշակությունը: Ունի 2 ԶԷԿ, մեքենաշինական, տեխնոլոգիական, մանկավարժական ինստ-ներ, դրամատիկական թատրոն, հայրենագիտական թանգարան: Առաջին անգամ հիշատակվել է 1267-ին:

**ՄՈԳԻԼՅՈՎԻ ՄԱՐԶ**, Բելոռուսական ՍՍՀ-ում: Կազմվել է 1938-ի հունվարի 15-ին: Տարածությունը 29 հզ. *կմ*$^2$ է, բն. 1254 հզ. (1980): Բաժանվում է 20 շրջանի: Ունի 13 քաղաք, 11 քտա: Վարչական կենտրոնը՝ Մոգիլյով: 1967-ին պարգևատրվել է Լենինի շքանշանով:

Քարտեզը տես 563-րդ էջում:

**Բնությունը**: Ռելիեֆը գերազանցապես հարթավայրային է, բարձրությունը՝ 150—200 *մ*: Մարզի հս-արլ-ում Օրշանսկ—Մոգիլյովի հարթավայրն է, հվ-արմ-ում՝ Կենտրոնաբերեզինյան հարթավայրը: Տարածված են ոչ բարձր մորենային թմբերը:

Կ լ ի մ ա ն չափավոր ցամաքային է, մեղմ ձմեռով: Հունվարի միջին ջերմաստիճանը —6,6°C-ից մինչև —8,2°C է, հուլիսինը՝ 17,8-ից 18°C, տարեկան տեղումները՝ 550—650 *մմ*: Խոշոր գետը Դնեպրն է՝ Սոժ, Բերեզինա և այլ վտակներով: Լճերն են Վիգոդան, Չորնոյեն, Ներոպլյան: Հ ո ղ ե ր ը ճմապոդզոլային և տորֆաճահճային են: Անտառները գրավում են տարածքի 31, ճահիճները՝ 7%-ը: Կենդանիներից կան աղվես, սկյուռ, կզաքիս, խլուրդ, նապաստակ, գորշուկ, որմզդեղն, այծյամ, վայրի խոզ, գայլ, լուսան, բազմատեսակ թռչուններ, լճերում՝ ձկներ:

**Բնակչության** 85,6%-ը բելոռուսներ են (1970): Բնակվում են նաև ռուսներ, հրեաներ, ուկրաինացիներ, լեհեր և այլք: Միջին խտությունը 1 *կմ*$^2$ վրա 46 մարդ է, քաղաքային բնակչությունը՝ 57% (1980): Կարևոր քաղաքներն են Մոգիլյովը, Բոբրույսկը, Կրիչևը, Գորկին, Օսիպովիչին:

**Տնտեսությունը**: Մ. մ. արտադրում է հանրապետության արդ. արտադրանքի 10%-ը: Էներգետիկայի հիմքն են կազմում Մոգիլյովի, Բոբրույսկի, Կրիչևի ԶԷԿ-երը, Օսիպովիչիի ՀԷԿ-ը և տեղական տորֆը: Տորֆի ձեռնարկություններ կան Դնեպրովսկում, Ռեդկի ռոգում, Տատարկայում: Տնտեսության մեջ կարևոր տեղ են գրավում մեքենաշինությունը և մետաղամշակումը: Գործում են Ս. Մ. Կիրովի անվ. ավտոգործարանը, «Էլեկտրոդվիգատել», «Ստրոմմաշինա», Մյասնիկյանի անվ. մետալուրգիական, ավտոմատ վերելակների գործարանները: Զարգանում է քիմ. արդյունաբերությունը, որը ներկայացված է արհեստական և սինթետիկ մանրաթելերի (տալիս է ՍՍՀՄ-ում արտադրվող լավսանի 2/3-ը), ռետինի գործարաններով ու ավտոդողերի կոմբինատով: Մ. մ-ին բաժին է ընկնում հանրապետությունից բնափայտի արտահանման 16%-ը: Զարգացած են փայտամշակման (Բոբրույսկ), շինանյութերի (Կրիչև, Կլիմովիչի) և սննդի (Բոբրույսկ, Մոգիլյով, Կրիչև) արդյունաբերությունը: Մոգիլյովում գործում է մսի կոմբինատ: Թեթև արդյունաբերությունը ներկայացված է կարի, կաշվի-կոշիկի, թաղիքե կոշիկների և 2 կաշվի գործարաններով: Մ. մ-ում մշակում են տարեկան, գարի, վարսակ, ցորեն, երկարաթել վուշ, կարտոֆիլ, բանջարեղեն, կերային կուլտուրաներ: Անասնապահությունն ունի կաթնամսատու ուղղություն:

**Տրանսպորտը**: Երկաթուղիների երկարությունը 806 *կմ* է, ավտոճանապարհներինը՝ 7,7 հզ. *կմ* (1972): Նավարկելի են Դնեպր, Բերեզինա, Սոժ գետերը: Մ. մ-ով է անցնում Ունեչա-Պոլոցկ նավթամուղը:

**Լուսավորությունը և առողջապահությունը**: 1972—73-ուս. տարում Մ. մ-ում կար 1605 հանրակրթական դպրոց, 26 պրոֆտեխնիկական ուսումնարան, 17 միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություն, 4 բուհ: Մոգիլյովում են գտնվում Բելոռուսական ՍՍՀ ԳԱ ֆիզիկատեխնիկական ինստ-ը և ֆիզիկայի ինստ-ի մասնաճյուղը: 1973-ին մարզում գործում էր 969 գրադարան, 6 թանգարան, 2 թատրոն, 993 ակումբ, 771 կինոսարք: Լույս է տեսնում մարզային «Մոգիլյովսկայա պրավդա» թերթը: 1973-ին մարզում կար 142 հիվանդանոց (14,1 հզ. մահճակալով), 2,8 հզ. բժիշկ:

**ՄՈԳԻԼՅՈՎ-ՊՈԴՈԼՍԿ**, Մ ո գ ի լ յ ո վ-Պ ո դ ո լ ս կ ի, մարզային ենթակայության քաղաք, Ուկրաինական ՍՍՀ Վիննիցայի մարզի Մոգիլյով-Պոդոլսկի շրջանի կենտրոնը: Երկաթուղային կայարան է, գետային նավահանգիստ Դնեստրի ափին: Բնակչությունը՝ 29,7 հզ. (1973): Հիմնադրել է Բրացլավի վոյեվոդա Ստեփան Պոտոցկին, XVI դ. վերջին: XVII դ. դարձել է առևտրական կենտրոն: Լեհաստանի երկրորդ բաժանման (1793) ժամանակ միացվել է Ռուսաստանին, սովետական իշխանություն հաստատվել է 1918-ի հունվարին: XVIII դ. 1-ին տասնամյակներին Մ-Պ-ում հաստատվել են գլխավորապես լեհահայ և մոլդովահայ կենտրոններից եկած հայեր: Հայկ. թաղամասը հիմնվել է քաղաքի կենտրոնում, Դնեստրի ափին: Մ-Պ-ի գլխավոր փողոցը կոչվել է «Հայկական»: Կիևի վոյեվոդա Ս. Պոտոցկու 1743-ի հրովարտակով Մ-Պ-ի հայերը ստացան ինքնավարություն: Դատական իշխանությունը իրականացնում էին հայ վոյթը և հայերից ընտրված երդվյալ դատավորները, որոնք ղեկավարվում էին *«Լեհահայոց դատաստանագրքով»*: Հայկ. դատարանը տեղավորված էր քաղաքապե-

տարանի շենքում: Հայերը իրավունք ստացան զբաղվել արհեստներով և առևտրով, մասնակցել տոնավաճառներին: Մ-Պ-ի հայերը հիմնականում զբաղվում էին ոգելից խմիչքների, երշիկեղենի, ապուխտի, մոմի, օճառի և կաշվի արտադրությամբ: Արտադրած ապրանքները վաճառքի էին հանում Լեհաստանի, Ուկրաինայի ու Լիտվայի քաղաքներում, երբեմն նաև Ստամբուլում: Բարձրորակ կաշվի արտադրությունը երկար ժամանակ հայերի մենաշնորհն էր: Հայ կաշեգործները ստեղծել էին «Գրիգոր Լուսավորիչ» համքարությունը: Մ-Պ-ում կային նաև հայկ. երեք եղբայրություն [մեկը՝ երիտասարդական (կտրիճվորաց)]: 1776-ին հայերը արդեն կազմում էին Մ-Պ-ի բնակչության մոտ կեսը (6000 մարդ): Մ-Պ-ում կառուցվեցին Ս. Գրիգոր Լուսավորիչ (1742—43) փայտաշեն, Ս. Երրորդության, Ս. Մոր այցելության և Գրիգոր պատրիարքի (1772—91)


Մոգիլյով-Պոդոլսկի հայկական եկեղեցին (XIII դ., այժմ՝ քանդված)

եկեղեցիները: Գաղութի պաշտոնական փաստաթղթերը (ծննդոց, մեռելոց և ամուսնության մատյանները) 1743—1826-ին կազմվում էին հայերեն: Մ-Պ-ի հայ քահանա Շիմոն Քժիշտոֆովիչը (1729—1810) գրել է հայ գաղութի 35 տարվա պատմությունը, որը չի պահպանվել: Հայկ. գաղութի առաջին վոյթ Յան Քժիշտոֆովիչին վստահված էր ամբողջ քաղաքի կառավարումը: Ռաֆայել Ուզունյանը (1800—63), որը մոտ քառորդ դար ապրել է Մ-Պ-ում, բնագրից թարգմանել է Հոմերոսի «Իլիականը», Վերգիլիոսի «Էնեականը», Եզովպոսի առակները ևն: 1810-ին ռուս. կառավարության որոշմամբ Մ-Պ-ում ստեղծվեց հայկ. կաթոլիկ եպիսկոպոսություն, որին ենթարկվեցին Ռուսաստանի բոլոր հայկ. կաթոլիկ եկեղեցիները: 1855-ին ռուս. կառավարության և Հռոմի պապի համաձայնությամբ այն վերացվեց, Պոդոլյեի հայկ. կաթոլիկ եկեղեցիները ենթարկվեցին Կամենեց-Պոդոլսկի լեհ եպիսկոպոսին:

Մ-Պ-ի հայկ. գաղութը զգալի վնասներ կրեց 1784-ի Դնեստրի վարարման և 1808-ի մեծ հրդեհի ժամանակ: 1848-ին բռնված խոլերայի համաճարակին զոհ գնացին մեծ թվով հայեր, սկսվեց արտագաղթ: Աստիճանաբար վատացավ նաև Մ-Պ-ի հայերի նյութական վիճակը: 1871-ին նրանք համախմբական նամակով օգնություն խնդրեցին հայոց Գևորգ Դ կաթողիկոսից: XX դ. սկզբներին Մ-Պ-ի հայկ. գաղութը դադարեց գոյություն ունենալ:

*Գրկ.* Մինաս Բժշկյան, Ճանապարհորդութիւն ի Լեհաստան..., Վնտ., 1830: Գրիգորյան Վ. Ռ., Մոգիլյով-Պոդոլսկ քաղաքի հայկական գաղութի պատմությունից, «ՊԲՀ», 1972, № 4: Նույնի, Մոգիլյով-Պոդոլսկ քաղաքի հայերի նամակը Գևորգ Չորրորդ կաթողիկոսին, «ԲՀԱ», 1973, № 3: Նույնի, История армянских колоний Украины и Польши, Е., 1980.

*Վ. Գրիգորյան*

**ՄՈԳՈՒԹՅՈՒՆ,** կախարդության, հմայության, զանազան սնապաշտ գուշակությունների անվանումներից մեկը, որի ծագումը կապվում է հին Իրանում զրադաշտական կրոնը սպասարկող քրմերի՝ մոգերի անվանը:

**ՄՈԴ ԹԱԳՈՒՀՈՒ ԵՐԿԻՐ** (Queen Maud Land), Արևելյան Անտարկտիդայի մաս, արևմտյան երկայնության 20°-ի և արևելյան երկայնության 45°-ի միջև: Ծովից ներկայացնում է դեպի հվ. բարձրացող (ավելի քան 3500 *մ*) հզոր սառցադաշտային ծածկույթի մակերևույթ: Առափնյա շրջանում առանձին լեռնաշղթաներ և գագաթներ բարձրանում են սառցադաշտի մակերեսից ավելի քան 3000 *մ*: Ափերը ողողվում են Լազարևի, Ռիսեր-Լարսենի և Տիեզերագնացների ծովերով: Գործում են ՍՍՀՄ, ՀԱՀ, Ճապոնիայի գիտական կայանները: Մ. թ. ե. հայտնագործել է Ռիսեր-Լարսենի ղեկավարած նորվ. արշավախումբը՝ 1930-ին և կոչել նորվ. թագուհու անունով:

**ՄՈԴԱԼ ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ,** *տրամաբանության* բաժին, որն ուսումնասիրում է «անհրաժեշտության» և «հնարավորության» տրամաբանական կատեգորիաները: Մ. տ-ում ուսումնասիրվում են իրական, հատկապես, անհրաժեշտ և հավանական դատողությունները: Մ. տ-յան արդի ձևայնացված համակարգերում անհրաժեշտ և հավանական դատողությունները կազմվում են $\Box$ և $\Diamond$ տրամաբանական գործողությունների միջոցով, որոնց օգնությամբ, կամայական A բանաձևից ելնելով թույլատրվում է կազմել $\Box A$ («անհրաժեշտ է A») և $\Diamond A$ («հնարավոր է A») բանաձևերը: Մ. տ-յան հիմնական համակարգերում այս գործողությունները արտահայտվում են միմյանց միջոցով, հետևյալ առնչությունների օգնությամբ՝ $\neg\Diamond A\equiv\Box\neg A$ («A-ն հնարավոր չէ այն և միայն այն դեպքում, եթե նրա բացասումը անհրաժեշտ է»), $\neg\Box A\equiv\Diamond\neg A$ («A-ն անհրաժեշտ չէ այն և միայն այն դեպքում, եթե նրա բացասումը հնարավոր է»), որոնք նման են Օ. դը *Մորգանի* օրենքներին: Մ. տ-յան հիմնական գործողությունները կարելի է մեկնաբանել բազմարժեք տրամաբանության տերմիններով: Մ. տ-յան որոշ համակարգեր առնչվում են կոնստրուկտիվ տրամաբանությանը:

Մ. տ-յան առաջին օրինաչափությունները բացահայտել են Արիստոտելը, Թեոփրաստեսը ու Եվդեմոսը: Մ. տ-յան ստեղծման և ձևայնացման գործում մեծ ավանդ են ներդրել ամերիկացի տրամաբան Կ. Լյուիսը և գերմանացի տրամաբան Ս. Կրիպկեն:

*Գրկ.* Բրուտյան Գ. Ա., Տրամաբանության դասընթաց, Ե., 1976: Фейс Р., Модальная логика, М., 1974.

*Ի. Զասլավսկի*

**ՄՈԴԱԼՈՒԹՅՈՒՆ,** 1. տրամաբանության մեջ, դատողության բնութագիրը ըստ նրա հավաստիության, հնարավորության, անհավանականության, անհրաժեշտության ևն (տես *Մոդալ տրամաբանություն*): 2. Լեզվաբանության մեջ «Մ.» տերմինն օգտագործվում է եղանակավորություն ձևով, որը բնութագրում է նախադասությունը ըստ բովանդակության կամ արտաքին լեզվական հատկանիշների՝ որպես ցանկություն, հրաման, խնդրանք կամ հավաստի, հնարավոր, անհնարին պնդում:

**ՄՈԴԵԼ** (ֆր. modèle, < լատ. modulus — չափ, նմուշ, տիպար), 1. զանգվածային կամ սերիական արտադրության նմուշ (ավտոմեքենայի Մ., հագուստի Մ. ևն), ինչպես նաև որևէ արտադրանքի, կոնստրուկցիայի տիպ, մակնիշ: 2. Փայտե, մոմե, գիպսե ևն նմուշ, որից կաղապար, դրոշմ է պատրաստվում որևէ իր այլ նյութով (քար, մետաղ ևն) վերարտադրելու կամ բազմացնելու համար (օրինակ, ձուլման արտադրություններում): 3. Արվեստում՝ պատկերվող առարկա, նաև բնորդ: 4. Սարք, որը վերարտադրում և նմանակում է, սովորաբար փոքրացած չափերով, այլ սարքի՝ «իսկականի» կառուցվածքը և գործողությունը՝ գիտական (տես ստորև), գործնական (օրինակ, արտադրական փորձարկումներում), ուսուցողական (էլեկտրաշարժիչի Մ. ֆիզիկայի լաբորատորիայում, քարտեզ, գլոբուս ևն) կամ սպորտային (օրինակ, *ավիամոդելիզմի*) նպատակներով:

Գիտական հետազոտության բնագավառում Մ. հետազոտվող օբյեկտի (նախատիպի) փոխարինողն է, նմանակը: Հաճախ օբյեկտի անմիջական հետազոտությունը հնարավոր կամ նպատակահարմար չէ (այն շատ մեծ կամ փոքր է, ունի զգալիորեն բարդ կառուցվածք, նրա հետազոտումը կապված է միջոցների կամ ժամանակի չարդարացված ծախսումների հետ ևն): Այդպիսի դեպքերում ուսումնասիրման է ենթարկվում օբյեկտի Մ., որը նախատիպի հետ գտնվում է որոշակի համապատասխանության մեջ: Այս հանգամանքը հնարավորություն է տալիս *մոդելավորումից* ստացված ինֆորմացիան տարածել նախատիպի վրա: Նախատիպը և Մ. կարող են տարբեր իրային օբյեկտներ լինել (օրինակ, կառուցվելիք հզոր կամուրջը և դրա փոքրացված նմանակը): Հաճախ նախատիպի և Մ-ի միջև թե՛ ձևի և թե՛ նյութի տեսակետից ոչ մի նմանություն չի լինում: Օրինակ, որպես ամբարտակի Մ. օգտագործվում է էլեկտրական շղթա: Նյութական օբյեկտների Մ-ներ կարող են ծառայել նշանային համակարգը, մտապատկերը (օրինակ, ատոմի մոլորակային Մ.), մաթ. բանաձևը, հավասարումը, տեսության մասը կամ ողջ տեսությունը և հակառակը, աքսիոմների որևէ համակարգի Մ. կարող է լինել համապատասխան օբյեկտների համակարգը: Երբեմն և՛ Մ., և՛ նախատիպը տեսական կառույցներ են: Այսպես, էվկլիդեսյան երկրաչափությունը օգտագործելով որպես Մ., հիմնավորվեց, որ դրա անհակասականությունից հետևում է Լոբաչևսկու երկրաչափության անհակասականությունը: Նը-

ման դեպքերում նախատիպի ու Մ-ի միջև համապատասխանությունը իզոմորֆ է (տես *Իզոմորֆություն*): Գիտական հետազոտության արդի փուլի համար բնութագրական է տարատեսակ Մ-ների կիրառման ընդլայնումը: Այդ կապակցությամբ առանձին հետաքրքրություն է ներկայացնում տարբեր համակարգերի հետազոտման կիբեռնետիկական եղանակը, որը հնարավորություն է տալիս մոդելավորել ոչ միայն բարդ համակարգեր ու կառուցվածքներ, այլև պրոցեսներ (ֆիզ., քիմ., կենսբ., արտադրական, հասարակական ևն): Ոչ մի Մ. չի կարող արտահայտել իրականության մոդելավորվող մասի բոլոր հատկություններն ու հարաբերությունները. ցանկացած Մ. նախատիպը բնութագրում է մոտավորապես: Այդ մոտավորության աստիճանը կախված է Մ-ի տեսակից, նրանում օգտագործվող տեսական ու տեխ. միջոցներից: Մ., չնչին բացառությամբ, մոդելավորվող օբյեկտի պարզեցված, այսինքն՝ հոմոմորֆ ձևն է (տես *Հոմոմորֆիզմ*): Սա չի նշանակում, թե Մ. բոլոր հարաբերություններում ավելի պարզ է, քան նախատիպը, այստեղ գլխավորը պրոբլեմի լուծումը հեշտացնելն է: Նախատիպ-մոդել հարաբերությունների հիմնավորումը կատարվում է վերացարկմամբ, որի օգնությամբ ձևավորվում են երկու օբյեկտների «պարզեցված տարբերակները»: Եթե պարզվի, որ դրանք նույնական են, ապա դրանցից մեկը կարող է հանդես գալ որպես մյուսի Մ.:

Մ-ի առավել ընդհանուր սահմանումը տրվում է հետևյալ կերպ. A և B երկու օբյեկտներից վերացարկման շնորհիվ ձևավորվում են նրանց A′ և B′ հոմոմորֆ ձևերը, եթե պարզվի, որ A′ և B′ միմյանց նկատմամբ իզոմորֆ են, ապա A և B օբյեկտներից յուրաքանչյուրը կարող է Մ. լինել մյուսի համար: Մ. նախատիպ հարաբերությունը սիմետրիկ է:

*Գրկ.* տես *Մոդելավորում* հոդվածի գրականությունը: *Լ. Քոչարյան*

**ՄՈԴԵԼԱՎՈՐՈՒՄ**, օբյեկտի (համակարգի, կառույցի, պրոցեսի) հետազոտումը դրա *մոդելի* միջոցով, մոդելի կառուցումը և ուսումնասիրումը այդ օբյեկտի մասին նոր գիտելիք ստանալու նպատակով: Մ. իմացաբանական կատեգորիա է՝ *ճանաչողության* կարևորագույն հնարներից ու մեթոդներից: Որպես իրականության արտացոլման եղանակ, Մ. առաջացել է հին աշխարհում և կատարելագործվել գիտական առաջադիմությանը զուգընթաց: Մ. լայնորեն կիրառվել է Վերածննդի դարաշրջանում. Բրունելլեսկին, Միքելանջելոն և ուրիշներ օգտվում էին կառուցվող օբյեկտների մոդելներից: Գ. Գալիլեյի և Լեոնարդո դա Վինչիի տեսական հետազոտություններում տրված են Մ-ման կիրառման սահմանները: XIX դ. կեսից, պայմանավորված բնագիտության և տեխնիկայի բուռն զարգացմամբ, զգալիորեն ընդլայնվել է Մ-ման կիրառությունը:

Մ. դասակարգում են ըստ մոդելների, Մ-ման օբյեկտների ու միջոցների, մոդելների կիրառման բնագավառների ևն: Մ. կոչվում է **առարկայական**, եթե հետազոտությունը կատարվում է այնպիսի մոդելով, որը վերարտադրում է օբյեկտի հիմնական երկրաչափական, ֆիզիկական, դինամիկական և ֆունկցիոնալ բնութագրերը: Կիրառվում է **նշանային** Մ., երբ որպես մոդելներ օգտագործվում են գծագրեր, բանաձևեր, հավասարումներ, որևէ լեզվի այբուբենով գրված բառեր, նախադասություններ ևն: Նշանային համակարգերն ու դրանց տարրերը դիտարկվում են միասնաբար որոշակի գործողությունների ու ձևափոխությունների հետ, որ կատարում է մարդը կամ մեքենան: Որոշ հանգամանքներում նշանային Մ. իրականացվում է մտային-ակնառու պատկերման միջոցով և հավակնում մտովի՝ զգայական-ակնառու ձևերով պատկերել ուսումնասիրվող օբյեկտի կառուցվածքը, տարրերի կապն ու փոխազդեցությունը (օրինակ, գազերի կինետիկ տեսության՝ Մաքսվելի, ատոմի մոլորակային և այլ մոդելներ): Պատկերային-մտային Մ. ճանաչողության պրոցեսի անհրաժեշտ պայմանն է նրա ձևավորման շրջանում: Այն հնարավորություն է տալիս սովորական (անմիջական) գիտափորձը փոխարինել մոդելային գիտափորձով: Մոդելային գիտափորձի հատուկ տեսակ է մտային գիտափորձը, երբ հետազոտողը մտովի գործառում է նշանային (հիմնականում՝ պատկերային) մոդելներով: Մտային գիտափորձի ճանաչողական նշանակությունն ակնհայտ է դառնում այն դեպքում, երբ անհնար է իրական փորձ կատարել կամ էլ իրագործել առարկայական (առարկայական-մաթեմատիկական) Մ.: Հայտնի է մտային գիտափորձի ճանաչողական դերը քվանտային մեխանիկայում, հարաբերականության տեսության մեջ և այլուր: **Մաթեմատիկական** Մ., որը նշանային Մ-ման մի տեսակ է, գիտական հետազոտության մեթոդներից է: Մաթ. Մ-ման էությունն այն է, որ հետազոտության օբյեկտի մասին հայտնի փաստերը արտապատկերում են ինչ-որ հարաբերությամբ օբյեկտին իզոմորֆ (կամ հոմոմորֆ) որևէ մաթ. ձևով (բանաձև, դիֆերենցիալ հավասարում, բազմություն, խումբ ևն), իսկ օրինաչափությունների հետագա իմացությունը կատարվում է այդ ձևի (մոդելի) ձևափոխության ու վերլուծության միջոցով: Գիտության տարբեր բնագավառներում մաթ. Մ-ման հնարավորությունները տարբեր են: Մեխանիկայում, օպտիկայում, էլեկտրադինամիկայում ևն, որպես կանոն, կառուցվում են ուսումնասիրվող երևույթի ճշգրիտ մաթ. մոդելներ: Իսկ քիմիայում, տնտեսագիտությունում, կենսաբանությունում հիմնական օրենքները մաթ. Մ-ման չեն ենթարկվել, սակայն այն կարևոր դեր է խաղում մի շարք հարցեր ուսումնասիրելիս: Սոցիոլոգիայում, հոգեբանությունում, մանկավարժությունում և հասարակական այլ գիտություններում մաթ. Մ. դեռևս գտնվում է ձևավորման փուլում: Մաթ. (տրամաբանական) Մ. լայն կիրառություն ունի նաև կիբեռնետիկայում և հաշվողական տեխնիկայում (տես ստորև): Մաթ. Մ. պետք է տարբերել մաթեմատիկայում կիրառվող Մ-ից: Այստեղ առանձնապես կարևոր են մեկնաբանող մոդելները, որոնց հատկությունները ուսումնասիրում է մոդելների տեսությունը: Այդ տեսությամբ ուսումնասիրվում են նաև աքսիոմացված դասերի ընդհանուր հատկությունները, այն կիրառություն է գտել մաթեմատիկայի մյուս ճյուղերում նույնպես: Հաճախ որպես մեկնաբանող մոդել հանդես է գալիս օբյեկտների համախումբը, որոնց հատկությունները և դրանց միջև հարաբերությունները բավարարում են աքսիոմների տվյալ համակարգին: Բացառված չէ, որ աքսիոմների համակարգի կամ տեսության մոդել հանդես գա մաթ. այլ տեսություն, որի նույնականությունը ապացուցված է գործնականում (օրինակ, Լոբաչևսկու երկրաչափության Է. Բելտրամիի ու Ֆ. Կլայնի մոդելները):

Մաթ. տրամաբանության մեջ որևէ բովանդակալից տեսության մոդել համարվում է այն ձևական համակարգը (հաշիվը), որի մեկնաբանումը այդ տեսությունն է: Համանման բնույթ ունի մոդելի օգտագործումը լեզվաբանության մեջ: Լեզվաբանական մոդելները կարևոր դեր են խաղում ինչպես տեսական լեզվաբանական հետազոտություններում (լեզվաբանական հասկացությունների ու դրանց միջև կապերի ճշտում, կառուցվածքների բացահայտում, որոնք կան լեզվական երևույթների անսահման բազմազանության մեջ ևն), այնպես էլ ինֆորմացիոն լեզուների կառուցման, մեքենայական թարգմանության մշակման և այլ խնդիրների լուծման գործում: **Կիբեռնետիկական** Մ. սովորաբար իրացվում է ընդհատ կամ անընդհատ գործողության հաշվողական մեքենաների միջոցով և կիրառվում է հիմնականում բարդ համակարգերի հե՚ոազոտության համար: Այս դեպքում որևէ պրոցեսի կամ երևույթի մոդել համարվում է ինչպես դրա գործողության ալգորիթմը, այնպես էլ էլեկտրոնային հաշվողական մեքենան՝ համապատասխան ծրագրավորումից հետո: Կիբեռնետիկական Մ-ման դեպքում սովորաբար վերացարկվում են համակարգի կառուցվածքից և այն դիտարկում որպես «սև արկղ»: Կիբեռնետիկական Մ-ման կարևոր առանձնահատկությունը մտային գործունեության Մ. է, որը մարդուն անսահմանափակ հնարավորություններ է տալիս: Մինչև 1940-ական թթ. վերջը, երբ ստեղծվեցին թվանշանային հաշվողական մեքենաները, համակարգերի ուսումնասիրությունը հիմնականում կատարվում էր անալոգային հաշվողական մեքենաներով: Ներկայումս անալոգային Մ-ման դերը նվազել է, քանի որ թվանշանային հաշվողական մեքենաներով Մ. գերադասելի է ճշտության և համընդհանրության տեսակետից:

Ներկայումս Մ. հաջողությամբ կիրառվում է կենդանի և անկենդան բնության հետազոտություններում, տեխնիկայի ամենատարբեր բնագավառներում, մարդու և հասարակության մասին գիտություններում: Հատկապես տարածում են գտել ֆիզիկական Մ., Մ. կենսաբանության մեջ, էկոնոմիկայում:

**Ֆիզիկական** Մ., որը օբյեկտի ուսումնասիրությունը փոխարինում է այդ օբյեկտի երկրաչափական և ֆիզիկական հատկանիշներն ունեցող մոդելի փորձա-

բարական ուսումնասիրությամբ, առարկայական Մ-ման տարատեսակ է: Այն կիրառվում է հիդրոտեխնիկայում, ավիացիայում, հրթիռային և տիեզերական տեխնիկայում, շինարարական գործում, նավաշինության, սարքաշինության մեջ ևն: Ֆիզիկական Մ-ման հիմնական խնդիրը այնպիսի երևույթների հետազոտությունն է, որոնք տեղի են ունենում կամ կարող են տեղի ունենալ «բնօրինակային պայմաններում»: Ֆիզիկական Մ-ման հիմքում ընկած են նմանության տեսությունը և չափողականությունների վերլուծությունը: Նախատիպի և մոդելի որոնվող մեծությունները ժամանակի համապատասխան կետում համեմատական են: Այդ փաստը հնարավորություն է տալիս մոդելի ուսումնասիրության արդյունքները վերահաշվարկել նախատիպի համար՝ «նմանության գործակիցներ» կոչվող բազմապատկիչների օգնությամբ:

Մ. էկոնոմիկայում ուսումնասիրվող (կամ կառավարվող) օբյեկտի վերացական մոդելի կառուցման միջոցով տնտ. համակարգերի հետազոտման մեթոդ է: Ենթադրում է օբյեկտի ուսումնասիրություն, մոդելի կառուցում և փորձարարական կամ տեսական վերլուծություն: Արդյունքում ստացվում են հետազոտվող օբյեկտի մասին քանակական և որակական տվյալներ: Տնտ. համակարգերի մաթ. և կիբեռնետիկական մոդելների միջոցով հետազոտվում են այդ համակարգերի գործունեության սկզբունքները, կատարվում է տեսական դրույթների ստուգում և ճշգրտում ըստ որոշակի չափանիշի՝ զարգացման տարբերակների հնարավոր բազմություններից լավագույնի ընտրություն, տնտ. համակարգի կառուցվածքի, զարգացման դինամիկայի, կայունության, մակրոէկոնոմիկայի պարամետրերի հարաբերակցության, արժեքային ցուցանիշների որոշում ևն: Տնտ. համակարգերի օպտիմալ կառավարման խնդիրները լուծելիս այդ մեթոդով որոշվում են աշխատանքային, նյութական, բնական ռեսուրսների չափերը, ինչպես նաև գիտատեխնիկական առաջընթացի մակարդակը բնութագրող պայմանները՝ ժամանակի յուրաքանչյուր պահի համար: Մ-ման միջոցով պլանի օպտիմալացումը ապահովում է տնտ. զգալի արդյունք: Էկոնոմիկական Մ-ման արդյունավետությունը որոշվում է օբյեկտի մասին ելակետային դրույթների գիտական հիմնավորվածությամբ, ինչպես նաև դրա էական բնութագիրը հետազոտողի կողմից առանձնացնելու հմտությամբ: Էկոնոմիկական բարդ համակարգերի հետազոտության համար օգտագործվում են առավելապես մաթ. մոդելներ:

Մ. կենսաբանության մեջ կիրառվում է մոդելների օգնությամբ կենսաբանական կառուցվածքների, գործընթացների և պրոցեսների ուսումնասիրման համար՝ կենդանի օրգանիզմի կազմակերպման տարբեր մակարդակներում (մոլեկուլային, ենթաբջջային, բջջային, օրգանային ևն): Կենսաբանական գիտություններում կիրառվում են Մ-ման տարբեր տեսակներ: Մի դեպքում, որպես մարդու կամ այլ կենդանի օրգանիզմի մոդել, հանդես է գալիս փորձակենդանին (շուն, առնետ, կապիկ), որի միջոցով վերարտադրվում են որոշակի վիճակներ կամ հիվանդություններ: Դա թույլատրում է փորձնականորեն ուսումնասիրել տվյալ վիճակի կամ հիվանդության մեխանիզմը և ներգործել նպատակահարմար ձևով: Մեկ այլ դեպքում, ֆիզիկական կամ քիմ. միջոցներով վերարտադրվում են կենսաբանական կառուցվածքներ, գործընթացներ կամ պրոցեսներ: Մ., որպես կանոն, մոդելավորվող կենսաբանական երևույթի մոտավոր նմանակն է: Կենսաբանական գիտությունների արդի զարգացումը զգալի չափով պայմանավորված է մաթ. (տրամաբանական) մոդելների կիրառմամբ, որոնց օգնությամբ տրվում է կենդանի համակարգերի կառուցվածքի, կապերի և գործողության օրինաչափությունների մաթ. կամ տրամաբանական-մաթեմատիկական նկարագրությունը: Կենդանի համակարգերի մաթ. (տրամաբանական) մոդելները կառուցվում են կամ փորձնական տվյալների հիման վրա, կամ մտահայեցողաբար՝ ինչ-որ հիպոթեզի օրինաչափության նկարագրությամբ:

Մ-ման ճանաչողական դերը նոր տեսությունների ստեղծմանը նպաստելն է: Հաճախ տեսությունը ծագում է ուսումնասիրվող երևույթը մոտավոր, պարզեցված արտացոլող մոդելի տեսքով, որպես նախնական, աշխատանքային հիպոթեզ: Հետագայում Մ-ման ընթացքում առաջ են գալիս նոր գաղափարներ, բացահայտվում մինչ այդ անհայտ փաստեր, որոնց հիման վրա ճշգրտվում է նախկին մոդելը, ստեղծվում ավելի կատարյալ և ամբողջական մոդել:

*Գրկ.* Մոդելը և մտային էքսպերիմենտը ֆիզիկական իմացության մեջ, Ե., 1975: Эшби У. Р., Введение в кибернетику, пер. с англ., М., 1959; Глинский Б. А. и др., Моделирование как метод исследования (гносеологический анализ), Л., 1965; Штофф В. А., Моделирование и философия, М.—Л., 1966; Чавчавадзе В. В., Гельман О. Я., Моделирование в науке и технике, М., 1966; Уемов А. И., Логические основы метода моделирования, М., 1971; Бирюков Б. В., Геллер Е. С., Кибернетика в гуманитарных науках, М., 1973.

*Լ. Քոչարյան, Ա. Պետրոսյան, Ի. Զասլավսկի, Գ. Բաբաջանյան, Հ. Սարգսյան*

**ՄՈԴԵՆԱ** (Modena) Գուստավո (1803—1861), իտալացի դերասան: Պադուայի համալսարանում ստացել է իրավաբանական կրթություն: Բեմական գործունեությունն սկսել է 1824-ին: Ելույթ է ունեցել տարբեր թատերախմբերում, այնուհետև կազմակերպել սեփականը: Մ. մասնակցել է 1831-ի Բոլոնիայի ապստամբությանը, սերտ կապերի մեջ եղել «Երիտասարդ Իտալիա» գաղտնի հանրապետական ընկերության և նրա հիմնադիր Ջ. Մաձինիի հետ: Ձգտել է թատրոնը զենք դարձնել հանուն իր ժողովրդի ազատության և անկախության պայքարի: Լավագույն դերերից են՝ Աղելգիզ (Մանձոնիի «Աղելգիզ»), Բրուտոս, Սավուղ, Փիլիպոս (Ալֆիերիի «Բրուտոս», «Սավուղ», «Փիլիպոս») ևն: Մ-ի գործունեությունը նպաստել է դերասանական արվեստի իտալ. ռեալիստական դպրոցի ստեղծմանը: Եղել է դերասաններ Ա. Ռիստորիի, Է. Ռոսիի, Թ. Սալվինիի ուսուցիչը: 1888-ին լույս են տեսել Մ-ի նամակները, որոնք մեծ հետաքրքրություն են ներկայացնում թատրոնի ուսումնասիրման համար:

*Գրկ.* История западноевропейского театра, т. 3, М., 1963.

**«ՄՈԴԵՌՆ»**, «մոդեռն» ոճ (ֆրանս. moderne — նորագույն, արդիական), XIX դարի վերջի և XX դարի սկզբի եվրոպական և ամերիկյան արվեստի ոճական ուղղության անվանումներից մեկը: Բելգիայում, Մեծ Բրիտանիայում և ԱՄՆ-ում հայտնի է որպես «Նոր արվեստ» (Art Nouveau), Գերմանիայում՝ «Յուգենդստիլ» (Jugendstil), Ավստրիայում՝ «Սեցեսսիոնի ոճ» (Sezessionstil), Իտալիայում՝ «Լիբերտի ոճ» (stile Liberty), Իսպանիայում՝ մոդեռնիզմ (modernismo): «Մ.» առաջացել է բուրժ. մշակույթի ճգնաժամի պայմաններում, որպես նեոռոմանտիկական բողոքի տարատեսակ՝ ընդդեմ գռեհկության, քաղքենիության, հակաէսթետիզմի, պոզիտիվիզմի և պրագմատիզմի: «Մ.»-ի գեղագիտությունը ձևավորվել է *սիմվոլիզմի* և էսթետիզմի, Ֆ. *Նիցշեի* «կյանքի փիլիսոփայության» գաղափարների ազդեցությամբ: Ըստ նրա մի շարք տեսաբանների (բելգիացի Հ. Կ. վան դե Վելդե, որը հենվում էր Ու. Մորիսի սոցիալիստական ուտոպիաների վրա), «Մ.» պետք է դառնար իր իսկ ազդեցությամբ ձևավորվող նոր հասարակության կյանքի ոճը, մարդկանց շուրջը գեղագիտորեն հագեցված առարկայական տարածական ամբողջական միջավայր ստեղծեր, նոր, ոչ ավանդական ձևերով ու հնարներով օժտված արվեստների սինթեզի, ժամանակակից նյութերի ու կոնստրուկցիաների օգնությամբ արտահայտեր դարաշրջանի հզոր բովանդակությունը: «Մ.» ամենից ավելի հետևողականորեն իրագործվել է մենատների ճարտ. մեջ, բայց կառուցվել են նաև վարչական շենքեր, կամուրջներ, կայարանատներ, թատրոններ: «Մ.» ձգտել է վերացնել XIX դ. բուրժ. մշակույթին բնորոշ գեղարվեստական և ուտիլիտար սկզբունքների հակադրությունը, գեղագիտորեն իմաստավորել կառուցվածքային նոր համակարգերը, արվեստին հաղորդակցել կյանքի բոլոր ոլորտներն ու մարդուն դարձնել գեղարվեստական ամբողջության մասնիկը: Կապիտալիստական հասարակության շրջանակներում արվեստի միջոցով աշխարհը վերափոխելու ձգտումը խորապես ուտոպիստական էր: Եվ գործնականորեն այն դարձավ բուրժ. կենցաղը ձևավորող առաջին, համեմատաբար ամբողջական գեղարվեստական ոճը:

«Մ.» XIX դ. էկլեկտիզմին հակադրել է ոճավորված, ընդհանրացված, ռիթմիկորեն կազմավորված ձևի միասնությունը, ամբողջականությունն ու զարգացման ազատությունը, որի խնդիրն էր շնչավորել նյութաառարկայական միջավայրը, արտահայտել բեկումնային դարաշրջանի տագնապն ու լարվածությունը: «Մ.»-ի կազմավորման շրջանին (XIX—XX դդ. սահմանագիծ) բնորոշ են ազգային-ռոմանտիկական հովերը, միջնադարի և ժող. արվեստի նկատմամբ հետաքրքրությու-

նը: Տարբեր երկրներում կազմակերպվեցին գեղարվեստական-արհեստավորական արվեստանոցներ (նախօրինակը Ու. Մորիսի արվեստանոցներն էին, 1861), որոնք հաճախ հակադրվում էին կապիտալիստական արդյունաբերությանը: Հասուն «Մ.» (1900-ական թթ. վերջ և 1910-ական թթ.) սկզբունքորեն նոր գեղարվեստական ձևերի կիրառումով ձեռք բերեց միջազգային ոճի գծեր: Նրա արագ տարածմանը նպաստեցին տարբեր լեզուներով հրատարակվող բազմաթիվ ամսագրերը (այդ թվում՝ *«Միր իսկուստվա»*, 1898/99, Պետերբուրգ): «Մ.»-ի ձգտումը դեպի արվեստների սինթեզը հանգեցրեց նաև նոր տիպի արվեստագետի երևան գալուն, որն իր մեջ միավորում էր ճարտարապետին, գրաֆիկին, գեղանկարչին, կենցաղային իրեր ու կահույք ստեղծողին, տեսաբանին: «Մ.» XX դ. ճարտ. մեջ առաջին քայլն էր դեպի գեղարվեստական ու տեխ. միջոցների միասնությունը, ազատ, ֆունկցիայից բխած հատակագծումն ու շենքի օրգանիզմի կազմակերպումը, որի համար նպաստավոր էին հիմնակմախքային նոր կոնստրուկցիան (երկաթբետոնից) և նյութերը (ապակի, մետաղ, ջնարակասալեր, կտավ ևն) և, որպես այդպիսին, զերծ չէր թերություններից. պճնվածություն, ձևերի մանրայնություն, հստակ գաղափարի բացակայություն ևն, որոնք, սակայն, հրամցվում էին «նոր ոճ»-ի նշանաբանով: Միաժամանակ, «Մ.»-ի անկաշկանդ ձգտումը դեպի ձևաստեղծում հաճախ հանգեցնում էր տեխ. հնարավորությունների գերագնահատմամբ, սիմետրիայի և քաղաքաշինական կանոնավոր նորմերի ժխտմամբ, ճարտ. ձևերը բնության երևույթների նմանեցնելուն: Այստեղից էլ՝ ձևերի անսովոր պլաստիկան, զարդապատկերի (հատկապես՝ բուսական) առատությունը, հարթությունն ակտիվացնող բարդ ու տրոհված ռիթմերը, որոնք զուգորդում էին կերպարայինն ու վերացականը, շընչավորվածն ու նյութեղենը, կենդանին ու անկենդանը: «Մ.»-ի նշանավոր ներկայացուցիչներն էին Ա. Գաուդին (Իսպանիա), Վ. Օրտան և Հ. Կ. վան դե Վելդեն (Բելգիա), Ֆ. Օ. Շեխտելը (Ռուսաստան): Այդ ամենի հետ ճարտարապետներ Յո. Հոֆմանը, Յո. Օլբրիխը (Ավստրիա), Չ. Ռ. Մակինտոշը (Շոտլանդիա) ձգտում էին ռացիոնալիստական, երկրաչափորեն ճշգրիտ, խոշոր, հանգիստ հարթությունների ստեղծման, խիստ ձևերի, երբեմն նույնիսկ *պուրիզմի*: XX դ. սկզբի որոշ ճարտարապետներ՝ Օ. Վագները (Ավստրիա), Պ. Բերենսը (Գերմանիա), Օ. և Գ. Պեռեները (Ֆրանսիա) շատ բանով կանխորոշեցին ֆունկցիոնալիզմը՝ ջանալով դրսևորել կառույցի հիմնակմախքային կառուցվածքը, շեշտել զանգվածների ու ծավալների տեկտոնիկան: Հայ ճարտ-ներից «Մ.»-ի սկզբունքները կիրառել են Կարապետ և Լևոն Պալյանները (Կ. Պոլիս), Նիկողայոս Բաևը (Բաքու, Թիֆլիս) իրենց կառուցած մենատներում, գրասենյակային շենքերում: Երևանում, Ալեքսանդրապոլում, ինչպես և նախահեղափոխական շրջանի հայկ. քաղաքատիպ բնակավայրերում «Մ.» ներթափանցել է երկգույն քարերով (սև, կարմիր, դարչնագույն), կոփածո ճաղերով դռներով ու պատշգամբներով և զարդաքանդակներով հագեցված բնակելի շենքերի ճարտ. մեջ:

Կերպարվեստում «Մ.»-ին բնորոշ է հաստոցային ու դեկորատիվ-կիրառական արվեստների ձևերի փոխներթափանցումը: «Մ.»-ի զարդապատկերն ու նրա ճկուն գծերի յուրօրինակ ռիթմը կազմավորվել են գրաֆիկայում: Այդ շրջանում մեծ վերելքի են հասել վիմագրությունը, փայտագրությունը, գրքարվեստը: «Մ.»-ի առաջատար գրաֆիկներից են անգլիացի Օ. Բյորդսլին, գերմանացիներ Թ. Թ. Հայնեն, Գ. Ֆոգելերը, շվեյցարացի Ֆ. Վալլոտոնը, հոլանդացի Յա. Տորոպը, նորվեգացի Է. Մունկը, Ռուսաստանում՝ Ա. Ն. Բենուան, Կ. Ա. Սոմովը, պլակատի վարպետներ՝ ֆրանսիացի Ա. Թուլուզ-Լոտրեկը, Է. Գրասսեն, չեխ Ա. Մուխան, ավստրիացի Կ. Մոզերը: Սիմվոլիզմի հետ անքակտելիորեն կապված «Մ.» գեղանկարչության ու քանդակագործության ասպարեզում ձգտել է ստեղծել ինքնուրույն գեղարվեստական համակարգ, բայց միաժամանակ եղել է XIX դ. ավանդական ձևերից անցում նորագույն եվրոպական հոսանքների պայմանական լեզվին: Դրանում կարևոր ազդակ եղավ, այսպես կոչված, պոնտ-ավենյան դպրոցի գործունեությունը՝ Պ. Գոգենի գլխավորությամբ: «Մ.»-ի նկարներն ու պաննոները դիտվում էին որպես ինտերիերի տարածական ու հուզական միջավայրը կազմակերպող տարրեր: Այդ պատճառով էլ դեկորատիվությունը դարձավ «Մ.» գեղանկարչության գլխավոր հատկանիշներից մեկը: Այդօրինակ գործերում հաճախ կարելի է հանդիպել դեկորատիվ պայմանականության, զորգերի զարդապատկերային ֆոների և քանդակագործական հստակությամբ կերտված առաջին պլանի ֆիգուրների ու դեմքերի անհավատալի, սակայն «Մ.»-ի գեղանկարչությանը բնորոշ զուգորդումներ (Գ. Կլիմտը Ավստրիայում, Ֆ. Կնոպֆը Բելգիայում, Մ. Ա. Վրուբելը Ռուսաստանում): Գեղանկարչության արտահայտչականությունը ստեղծվում էր գունային մեծ մակերեսների զուգորդումով («Նաբի» խմբավորման նկարիչները Ֆրանսիայում, Լ. Ս. Բակստը Ռուսաստանում, Է. Մունկը Նորվեգիայում), նուրբ միագունավորումով (Վրուբել, Բենուա): Սիմվոլիզմի պոետիկայով էր պայմանավորված գծի և գույնի սիմվոլիկայի, համաշխարհային վշտի, մահվան, սիրատարփության, երազի, հեքիաթի, լեգենդի թեմաների նկատմամբ հետաքրքրությունը: Դինամիկան և ձևի սիլուետի հոսունությունը բնորոշ են քանդակագործությանը (բելգիացի Ժ. Միննե, գերմանացի Գ. Օբրիստ) և դեկորատիվ-կիրառական արվեստին (Ա. Գաուդիի խեցե և երկաթե կերտվածքները, Է. Գիմարի մետաղյա ցանկապատերը մետրոյում, Է. Գալլեի ապակե իրերը, Ռ. Լալիկի զարդեղենը Ֆրանսիայում, Լ. Կ. Թիֆանիի ապակյա անոթները ԱՄՆ-ում, Հ. Կ. վան դե Վելդեի կահույքը): Կառուցիկության ձգտումը, ձևերի լակոնիզմը, գծի հստակությունը դրսևորվել է Չ. Ռ. Մակինտոշի, Յո. Հոֆմանի, Ի. Ա. Ֆոմինի կահույքում: «Մ.»-ի բնորոշ առանձնահատկությունները ի հայտ են եկել մի շարք հայ արվեստագետների ստեղծագործություններում՝ Վ. Սուրենյանցի գըրքային նկարազարդումներում, Ե. Թադևոսյանի մի քանի գեղանկարներում (կապված էր Մամոնտովների Աբրամցևո կալվածքում ստեղծագործող և «Մ.»-ին հարող արվեստագետների հետ), Մ. Սարյանի վաղ շրջանի կտավներում («Միր իսկուստվա» խմբավորման ցուցահանդեսների ակտիվ մասնակից էր), Հ. Միհանաջյանի, քանդակագործ Հ. Գյուրջյանի մի շարք աշխատանքներում:

Պատկերազարդումը տես 704—705-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակ XVII:

*Գրկ.* Всеобщая история архитектуры, т 10, М., 1972; Madsen S. T., Jugendstil, Münch., 1967. *Մ. Միքայելյան, Մ. Ղազարյան*

**ՄՈԴԵՌՆԱՑՈՒՄ** (ֆրանս. modernisation < moderne — նորագույն, արդիական), նորացում, արդի պահանջներին ու նորմաներին համապատասխան փոփոխություն:

**ՄՈԴԵՌՆԻԶՄ** (ֆրանս. modernisme), խիստ սահմաններ չունեցող, պայմանական հավաքական տերմին, որով նշվում է XX դ. բուրժուական արվեստը, հիմնականում՝ կերպարվեստը (*կուբիզմ*, *ֆուտուրիզմ*, *էքսպրեսիոնիզմ*, *աբստրակտ արվեստ*, *էկզիստենցիալիզմ*, *դադաիզմ*, *սյուրռեալիզմ*, *նեոկլասիցիզմ*, աբսուրդի արվեստ, *«պոպ-արտ»*, *«օպ-արտ»*, կինետիկ արվեստ ևն): Չնայած բազմազան ուղղությունների յուրահատկություններին, Մ-ին հատուկ են ընդհանրական գծեր և գեղագիտական մի սկզբունքից մյուսներին անցումների որոշակի տրամաբանություն: Դրանց մեծ մասը կրում է միայնության, վախի, մարդկային գոյության անիմաստության կնիքը (տես *Անկումային արվեստ*), որոնք բուրժ. հասարակարգի, իմպերիալիզմի փուլի հասարակական-քաղ., տնտ. և հոգևոր կյանքի քայքայման և ճգնաժամի արդյունք են: Աշխարհայացքային առումով Մ-ին հատուկ է *կյանքի փիլիսոփայություն-պոզիտիվիզմ*, արժեք-գիտություն հակադրությունը, որտեղ արվեստին վերագրվում է մարդկենտրոն դեր՝ արտահայտել «մարդկային», հուզական, ոչ-բանական էությունը, որը հակադրվում է գիտական մտածողությանը: Դրա հետ մեկտեղ տրամաբանական կարգավորվածությանը (աշխարհի «երկրաչափական», մաթ. վերակառուցում) ձգտելու տեսքով գիտականակերպության ներթափանցումը Մ-ի վաղ ձևերի (կուբիզմ, ֆուտուրիզմ), մասամբ, աբստրակտ արվեստի, նեոկլասիցիզմի և *դոդեկաֆոնիայի* տարբերիչ գիծն է: Մ-ին բնորոշ է ռեալիստական ավանդապահությունից հրաժարվելու հետ կապված ձևաստեղծումը, ձգտումը դեպի ամեն գնով «նորարարությունները» և «հեղափոխությունները»: Նույնիսկ ամեր. Մ. («նոր առարկայականություն», ռեջիոնալիզմ), որը անդրադարձել է կարծես թե ավանդական ձևերին (կոպիտ և տգեղ, ըստ էության կեղծ և գրոտեսկային հորինվածքներ), այս իմաստով բացառություն չէ: Մ. յուրաքանչյուր նոր փուլում մնում է քիչ հաղորդակցելի, այն չի ընդունում զանգվածային մշակույթը, որը միօրինականացնում, կիսագրագետ և ոչ խստապահանջ

սպառողի շահերին ու ճաշակին է հարմարեցնում ավանդական ռեալիզմը: Մ-ի մանրբուրժ. խռովարարության ցայտուն գծերից է «ավանգարդի» հակադրումը մարդկության մնացած մասին (տես *Ավանգարդիզմ*): Այնուամենայնիվ մոդեռնիստական ուղղությունները միավորող գըլխավոր գեղագիտական սկզբունքը օբյեկտիվ իրականության համապատասխանությունից («նմանեցումից») հրաժարումն է: Այս տեսակետը ունի որոշակի իմացաբանական հիմքեր՝ մարդու սուբյեկտիվությունը և իրականության նկատմամբ ակտիվ վերաբերմունքը արվեստում արտահայտվում են այն բանում, որ արվեստագետը իր անհատականությամբ ստեղծում է յուրահատուկ «գեղարվեստական իրականություն»: Սակայն Մ. բացարձականացնում է այդ ընթացքը, սուբյեկտիվությունը հասցնում սուբյեկտիվիզմի, արվեստի աշխարհը ներկայացնելով որպես ինքնապրոյեկտում, ազատ ինքնարտահայտում, անհատական-ինտուիտիվ «ներզգայում» ևն: Ընդհանուր առմամբ Մ-ի հասարակական բովանդակությունը հակասական է. դրանում արտահայտվող բողոքը բուրժ. ապրելակերպի դեմ ավելի հաճախ արտահայտված է անկումայնության, անձնավորության ապադասակարգայնացման դիրքերից: Միասնական գաղափարական հավատամքի բացակայությամբ է պայմանավորված մոդեռնիստների իրարամերժ քաղ. համոզմունքների առկայությունը:

Գրկ. Լենինը կուլտուրայի և արվեստի մասին, Ե., 1958: Модернизм. Анализ и критика основных направлений, 3 изд., М., 1980; К у л и к о в а И. С., Философия и искусство модернизма, М., 1980. *Մ. Դանիելյան*

**ՄՈԴԵՐԱՏՈ** (իտալ. moderato — չափավոր), երաժշտության մեջ չափավոր *տեմպի* նշանակում, *ալեգրոյի* և ալեգրետոյի միջինը:

**ՄՈԴԻԼԻԱՆԻ** (Modigliani) Ամեդեո (12.7. 1884, Լիվոռնո — 15.1.1920, Փարիզ), իտալացի գեղանկարիչ, քանդակագործ, փարիզյան դպրոցի ներկայացուցիչ: 1906-ից ապրել է Փարիզում: Սովորել է Ֆլորենցիայի Գեղարվեստի ակադեմիայում: Կրել է Ա. *Թուլուզ-Լոտրեկի*, Պ. *Սեզանի*, Պ. *Պիկասոյի* ստեղծագործության, ինչպես նաև աֆրիկյան արձանագործության ազդեցությունը: Որպես քանդակագործ ձևավորվել է Կ. Բրինկուշիի ազդեցությամբ՝ հակված լինելով երկրաչափական ձևերի ու երկարավուն պարզ համամասնությունների («Գլուխ», կրաքար, 1913, Թեյթ պատկերասրահ, Լոնդոն): Դեկորատիվ հարթայնությամբ, հորինվածքի ընդգծված լակոնականությամբ, ուրվագծային ռիթմի երաժշտականությամբ, գունապատկերի հագեցվածությամբ բնորոշ Մ-ի գեղանկարչական կատարման յուրահատկությունը որոշակի է դարձել 1910-ական թթ. սկզբին: Իր, իբրև կանոն, միաֆիգուր նկարներում (դիմանկարներ, մերկեր) Մ. ստեղծել է մտերմիկ-անհատական, միաժամանակ մելամաղձոտ կերպարների յուրօրինակ մի աշխարհ. նրանց ինքնատիպ, մեղմ նրբերանգված հոգեբանությունը, լուսավոր բանաստեղծականությունը միահյուսվում են աշխարհում մարդու անպաշտպան լինելու մշտական, երբեմն ողբերգական զգացողությունը (Լ. Զբորովսկու դիմանկարը, 1917, Գեղարվեստական թանգարան, ՍանՊաուլու, «Պառկած մեծ մերկը», 1919, Ժամանակակից արվեստի թանգարան, Նյու Յորք):

Պատկերազարդումը տես 672-րդ էջից հետո՝ ներդիրում:

**ՄՈԴԻՖԻԿԱՑԻԱ** (< ուշ լատ. modificatio — փոփոխություն, ձևափոխություն) կ ե ն ս ա բ ա ն ո ւ թ յ ա ն  մ ե ջ, արտաքին միջավայրի պայմանների փոփոխության հետևանքով օրգանիզմի ոչ ժառանգական հատկությունների (ֆենոտիպի) փոփոխությունը, միևնույն հատկանիշի ֆենոտիպային դրսևորման տարբերությունները: Միջավայրի մոդիֆիկացնող գործոնները (ջերմաստիճանը, լուսավորությունը, սննդային ռեժիմը ևն) ազդում են տվյալ հատկանիշի զարգացման զգայուն կամ Մ-ման շրջանում: Մ., որպես կանոն, օրգանիզմի հարմարվողականության ռեակցիան է միջավայրի այս կամ այն գործոնների ազդեցության նկատմամբ և սահմանափակվում է գենոտիպով պայմանավորված ռեակցիայի նորմայով: Ոչ հարմարվողական Մ-ները զարգացման խանգարումներ են, մորֆոլոգիական և ֆիզիոլոգիական արատներ: Եթե Մ. կապված է որակական փոփոխությունների հանդես գալու կամ անհետանալու հետ, Մ-ման պրոցեսը կոչվում է ալտերնատիվ, իսկ քանակական հատկանիշների արտահայտման փոփոխությունների դեպքում՝ ֆլուկտուացիա: Մ., ի հակադրություն *մուտացիաների*, ժառանգաբար չի փոխանցվում:

**ՄՈԴԻՖԻԿԱՑԻԱ** մ ե տ ա ղ ն ե ր ի  և  հ ա մ ա ձ ու լ վ ա ծ ք ն ե ր ի, հալված մետաղների և համաձուլվածքների մեջ մոդիֆիկատորների (նյութեր, որոնց փոքր քանակությունը էապես փոխում է մշակվող մետաղի կամ համաձուլվածքի կառուցվածքն ու հատկությունները) ներմուծում: Մ-ի հետևանքով համաձուլվածքները ձեռք են բերում ավելի նուրբ կառուցվածք, որը բարելավում է դրանց մեխանիկական հատկությունները: Մ. կիրառվում է թուջի, ալյումինի և այլ մետաղների ձուլույթների արդյունաբերության մեջ: Որպես թուջի և պողպատի մոդիֆիկատորներ օգտագործում են մագնեզիումը, ֆեռոսիլիցիումը, սիլիկակալցիումը, ալյումինը, տիտանը: Մ. պ ո լ ի մ ե ր ն ե ր ի, վերմոլեկուլային կառուցվածքի կարգավորման (բյուրեղացման սաղմերի ներմուծում, ջերմամշակում) կամ մոլեկուլի քիմ. բաղադրության փոփոխության (ռեակցունակ խմբերի ներմուծում) միջոցով պոլիմերների հատկությունների նպատակային փոփոխություն: Կիրառվում է, օրինակ, պլաստմասսաների հարվածային ամրությունը բարձրացնելու, քիմ. մանրաթելերի ներկումը դյուրինացնելու համար:

**ՄՈԴՐԵԿԻԼԻ** Միքայել (ծն. և մահ. թթ. անհտ.), X դարի Վրաստանի գրականերաժշտական գործիչ, վանական: Ծագումով Տայքի վրացադավան հայերից: Համակարգել է Վրաստանում իր հավաքած եկեղեցական՝ բուն վրաց. և հունարենից թարգմանված հիմները, ամփոփել մի ժողովածուում, որը արտագրվել է (կողմնակի տվյալների համաձայն) 994—1001-ին, Տայքում: Պահպանվել է միայն մի մասը՝ 272 թերթ (37,5×29,5), հրապարակվել երկու հատորով՝ ֆաքսիմիլային և ժամանակակից շրիֆտով արտագրված վիճակում («Հիմներ», հրտ. 1978): Հիմների $^2/_3$-ը պարունակում են նոտագրության նշաններ («նիշանի», նշված են նաև ձայնեղանակները՝ «խմայի»), որոնք արտաքուստ նման են IX դ. հայկ. խազերին, բայց գործածության եղանակով ինքնատիպ են: Չնայած իր համեմատական ընդհանուր պարզությանը, Մ-ի նոտագրության համակարգը, ինչպես և ժողովածուն, ամբողջապես դեռևս բավարար չափով ուսումնասիրված չեն, բայց ակնհայտ է վրաց. միջնադարյան երաժշտական փոքրաքանակ գրչագրերի շարքում այդ ժողովածուի բացառիկ արժեքավորությունը: Այն էական է նաև ընդհանուր արևելա-քրիստոնեական բանաստեղծական-երաժշտական մշակույթի ուսումնասիրության համար: Բնագրի տեքստում որոշ հիմների վերջին բառերից հետո կան հայերեն նշումներ, որոնց մեծ մասը այդ բառերի թարգմանությունն է, մի քանիսը՝ Մ-ի և ժողովածուի գրիչներ Մուսեսի ու Ստեփանի հիշատակագրությունները (Ա բ ու լ ա ձ ե Ի., «10-րդ դարի վրացերեն մի ձեռագրի հայերեն հիշատակագրությունները և նրանց նշանակությունը հայ բարբառագիտության համար», «ԲՄ», 1958, № 4): *Ռ. Աթայան, Ս. Երևանյան*

**ՄՈԴՈՒԼ**, տես *Բացարձակ մեծություն*:

**ՄՈԴՈՒԼ** (< լատ. modulus — չափ) ճ ա ր տ ա ր ա պ ե տ ու թ յ ա ն  մ ե ջ: Պայմանականորեն ընդունված չափ, որին բազմապատիկ են շենքի (համալիրի) և նրա առանձին մասերի չափերը: Տարբեր ժողովուրդների ճարտ. արվեստում որպես Մ. ընդունվել են տարբեր մեծություններ՝ կախված շենքի կառուցողական և կոմպոզիցիոն առանձնահատկություններից: Կառույցի համար Մ. կարող են ընտրվել՝ նրա հիմնական չափումներից մեկը (գմբեթի տրամագիծը կամ դահլիճի կողմերից մեկը՝ Եվրոպայի և Միջին Ասիայի միջնադարյան գմբեթավոր կառույցներում), ճարտ. տարրերից որևէ մեկի չափը [սյան կտրվածքի տրամագիծը, տրիգլիֆի (եռակոսիկի) լայնությունը՝ անտիկ օրդերային կառույցներում] կամ շինարարական տարրերից մեկի չափը (գերանի, աղյուսի երկարությունը): Հայկական միջնադարյան գմբեթավոր կառույցներում, որպես Մ., հիմնականում ընդունված է եղել գմբեթային քառակուսու կողմի 1/n մասը: Որպես Մ. կարող է ընդունվել նաև երկարության որևէ չափ՝ ֆուտ, սաժեն, մետր ևն, որն այս դեպքում անվանվում է գ ծ ա յ ի ն  Մ.:

Մ-ի գաղափարը առաջացել է կառուցողական պահանջներից, այնուհետև դարձել կոմպոզիցիայի այն միջոցներից մեկը, որի շնորհիվ ճարտ. ամբողջությունն ու նրա առանձին մասերը բերվում են ներդաշնակության (օրինակ՝ անտիկ ճարտ. արվեստում *ոսկե հատումը*, Լը Կորբյուզիեի գործադրած *մոդուլորը*): Մ-ի կիրառումը բնավ չի հանգեցրել բոլոր մեծությունների մեխանիկական հաշվարկի. ընտրելով արտահայտիչ հարաբերակցություններ, ճար-

տարապետները, հիմնվելով տեսողական ընկալման առանձնահատկությունների վրա, առանձին մասերի համաչափություններում որոշակի շեղումներ են կատարել:

XX դ. 2-րդ կեսին շինարարության ինդուստրիալ հավաքովի մեթոդի զարգացմանը զուգընթաց, որպես կառույցի հատակագծային և կառուցվածքային տարրերի համաձայնեցման, նրանց միօրինականացման և ստանդարտի բերելու միջոց, առանձնապես տեխ. մեծ նշանակություն են ստացել հաստատուն գծային Մ-ները: Հիմնական Մ.՝ 10 *սմ* չափով, նրա խոշորացված ածանցյալները (3 Մ., 6 Մ., 12 Մ., 15 Մ., 30 Մ., 60 Մ.) և կոտորակային Մ-ներն իրենց կիրառման կանոնների հետ կազմում են մոդուլային համակարգ, որը սահմանված է սովետական, արտասահմանյան և միջազգային չափանիշներով և ստանդարտներով:

*Գրկ.* Երեմյան Ա., Հայաստանի V—VII դդ. գմբեթավոր կառույցների նախագծման սկզբունքների մասին, «ԼՀԳ», 1974, № 10: Хазанов Д. Б., Модуль в архитектуре, в сб.: Вопросы теории архитектурной композиции, [в.] 2, М., 1958.

**ՄՈԴՈՒԼԱՑԻԱ**, մոդուլյացիա (< լատ. modulatio — համաչափություն, < modus — չափ, նաև՝ *լադ*), երաժշտական երկի մեջ անցումը մեկ տոնայնությունից մյուսը, որ ծառայում է երաժշտական մտքի զարգացմանը: Երկի սկզբնական տոնայնությունը սովորաբար ընկալվում է որպես հիմնական և կայուն, երևան եկող նոր տոնայնությունները՝ անկայուն և ըստ այնմ առաջ են բերում լարվածություն: Որպես կանոն, երկն ավարտվում է սկզբնական տոնայնությամբ՝ լարվածության պարպումով, նոր տոնայնությունները, միաժամանակ, յուրովի «երանգավորում» են երաժշտությունը: Բազմաձայն երաժշտության մեջ Մ-ի ամենատարածված եղանակը անցումն է երկու տոնայնությունների համար ընդհանուր ակորդի միջոցով (դիատոնիկ և էնհարմոնիկ Մ.), կիրառվում է նաև տարբեր ակորդները խրոմատիկ ընթացքով միմյանց կապելու եղանակը (խրոմատիկ Մ.): Գոյություն ունի նաև առանց ակորդների կատարվող մեղեդիական Մ.: Մ-ի տեսությունը կազմում է ներդաշնակագիտության հատուկ բաժինը:

*Գրկ.* Փաշինյան Է., Հարմոնիայի դասագիրք (Ներդաշնակագիտություն), գիրք 2, Ե., 1966: Мазель Л., Проблемы классической гармонии, М., 1972. *Ռ. Աթայան*

**ՄՈԴՈՒԼՅԱՏՈՐ**, *մոդուլումն* իրականացնող սարք: Ինֆորմացիայի հաղորդման համակարգերում ապահովում է կրող տատանման պարամետրերի փոփոխումը հաղորդվող հաղորդագրության փոփոխման օրենքի համաձայն: Էլեկտրակապի և ռադիոհաղորդման հաղորդիչ սարքերի անհրաժեշտ բաղադրամասն է: Մ-ի սխեման և աշխատանքի սկզբունքը պայմանավորված են մոդուլման տեսակով: Լինում են՝ ամպլիտուդային, հաճախային, փուլային, իմպուլսային ևն: Մ-ում կրող տատանման կառավարումը կատարվում է ոչ գծային դիմադրության կամ ռեակտիվ տարրի օգնությամբ: Օրինակ, ամպլիտուդային մոդուլումը իրագործվում է եռէլեկտրոդ (բազմէլեկտրոդ) լամպային կամ տրանզիստորային սխեմաներում (նկ. 1), իսկ հաճախային մոդուլումը՝ ռեակտիվ լամպի կամ տարրի օգնությամբ (նկ. 2): Վերջին դեպքում մոդուլող լարումով (հաղորդագրությամբ) փոփոխելով ռեակտիվ լամպի կամ տարրի ունակությունը (ինդուկտիվությունը), փոփոխում են գեներատորի հաճախականությունը: Մ-ի աշխատանքը հիմնականում գնահատվում է մոդուլման բնութագրով: Ամպլիտուդային մոդուլման դեպքում $M=f(v_\Omega)$, իսկ հաճախայինի դեպքում՝ $\frac{\Delta\omega}{\omega_0}=f(v_\Omega)$, երկու դեպքում էլ $\Omega=\text{const}$, M-ը ամպլիտուդային մոդուլման գործակիցն է (մոդուլված տատանման պարամետրի առավելագույն և միջին արժեքների հարաբերությունը), $v_\Omega$-ն՝ մոդուլող լարման ամպլիտուդը Մ-ի մուտքում, $\frac{\Delta\omega}{\omega_0}$-ն մոդուլվող հաճախականության հարաբերական շեղումն է Մ-ի ելքում, Ω-ն՝ մոդուլող տատանման հաճախականությունը:




Նկ. 1. տրանզիստորային ամպլիտուդային մոդուլյատորներ. *ա*—բազային, *բ*—կոլեկտորային, $U_{բհ}$—մոդուլվող տատանումների լարում, S—ցածրհաճախային տրանսֆորմատոր, $C_1$, $C_2$, և L, $L_1$ կոնդենսատորներ և ինդուկտիվության կոճեր, R և $R_1$—հաստատուն լարման բաժանարարի ռեզիստորներ, $E_կ$—տրանզիստորի կոլեկտորին տրվող լարում, $U_մ$—մոդուլող լարում

Նկ. 2. վարիկապային հաճախային մոդուլյատոր. Վ—վարիկապ, $E_վ$, $E_տ$—վարիկապին և տրանսֆորմատորին տրվող լարումներ, C, $C_1$, $C_2$—քանդվող շղթաների կոնդենսատորներ, R, $R_1$, $R_2$—քանդվող շղթաների ռեզիստորներ, L—ինդուկտիվության կոճ, $U_մ$—մոդուլվող լարում, S—տրանզիստոր




**ՄՈԴՈՒԼՆԵՐ ԱՌԱՁԳԱԿԱՆՈՒԹՅԱՆ**, նյութի առաձգական հատկությունները բնութագրող մեծություններ: Առաձգական մարմնի փոքր դեֆորմացիաների դեպքում, երբ կիրառելի է *Հուկի օրենքը*, լարումների և դեֆորմացիաների միջև կախումը գծային է: Մ. ա. համեմատականության գործակիցներ են այդ առնչություններում: Առաձգականության մոդուլների ֆիզիկական իմաստը բացահայտվում է առաձգական մարմնի լարված վիճակների հիմնական տարրական տեսակների (միակողմանի նորմալ լարում, մաքուր սահք, համակողմանի նորմալ լարումներ) ուսումնասիրմամբ: Պարզ ձգման (սեղմման) ժամանակ առաջացող σ միակողմանի նորմալ լարմանը համապատասխանում է ձգման ուղղությամբ երկայնական առաձգականության մոդուլը՝ E (Յունգի մոդուլ): Այն հավասար է σ նորմալ լարման և լարման գործադրման ուղղությամբ վերջինիս հետևանքով առաջացող ε հարաբերական երկարացման հարաբերությանը՝ $E=\sigma/\varepsilon$, և բնութագրում է ձգման դեֆորմացիային դիմադրելու նյութերի ունակությունը: Մաքուր սահքի լարվածային վիճակին, որի դեպքում երկու փոխուղղահայաց հարթակներով ազդում են միայն τ շոշափող լարումները, համապատասխանում է G սահքի մոդուլը: Այն հավասար է τ շոշափող լարման և հարթությունների միջև ուղիղ անկյան աղավաղման չափը որոշող γ սահքի անկյան հարաբերությանը՝ $G=\frac{\tau}{\gamma}$ և արտահայտում է ձևի փոփոխությանը դիմադրելու նյութի ունակությունը (ծավալի պահպանումով): Հիդրոստատիկական ճնշման ժամանակ առաջացող σ նորմալ համակողմանի լարմանը համապատասխանում է ծավալային սեղմման մոդուլը: Այն հավասար է նորմալ լարման և հարաբերական ծավալային սեղմման հարաբերությանը. $K=\frac{\sigma}{\Delta}$ և բնութագրում է ձևի փոփոխությամբ չուղեկցվող ծավալի փոփոխությանը դիմադրելու նյութի ունակությունը: Նյութի առաձգական հատկությունները բնութագրող հաստատուն մեծություններից է Պուասոնի գործակիցը՝ ν-ն, որը հավասար է ε′ հարաբերական լայնական սեղմման բացարձակ արժեքի և ε հարաբերական երկայնական երկարացման հարաբերությանը, այսինքն՝ $\nu=|\varepsilon'|/\varepsilon$: Համասեռ իզոտրոպ մարմնի համար Մ. ա. միևնույնն են բոլոր ուղղություններով: E, G, K և ν հաստատունները կապված են միմյանց հետ հետևյալ առնչություններով.

$$G=\frac{E}{2(1+\nu)}, \qquad K=\frac{E}{3(1-2\nu)}:$$

Անիզոտրոպ նյութի առաձգականության մոդուլների թիվը կախված է նյութի կառուցվածքից: Առաձգական հատկությունների տեսակետից սիմետրիայից զուրկ անիզոտրոպ մարմնի առաձգականության մոդուլները 21-ն են: Սիմետրիայի առկայության դեպքում դրանց թիվը կրճատվում է:

Մ. ա. որոշում են փորձնականորեն: Դրանք խիստ հաստատուն մեծություններ չեն, այլ կախված են նյութի քիմ. բաղադրությունից, նախնական մշակումից և ջերմաստիճանից:

**ՄՈԴՈՒԼՈՐ**, մ ո դ ու լ յ ո ր, մ ո դ յ ու լ ո ր (ֆրանս. modulor), համաչափությունների համակարգ: 1940-ական թթ. առաջարկել է *Լը Կորբյուզիեն* (իր աշխատակիցների հետ): Մ-ի հիմքում ընկած են մարդու մարմնի չափերը և համաչափությունները (ելակետային մեծություններն են. մարդու պայմանականորեն ընդունված հասակը՝ կանգնած վիճակում, 183 *սմ*, մինչև արևահյուսակը՝ 113 *սմ*, թևը բարձրացրած վիճակում՝ 226 *սմ*), *ոսկե հատումը* և Ֆ ի բ ո ն ա չ չ ի թ վ ե ր ի շ ա ր ք ը: Մ-ի ստեղծման նպատակն էր ճարտ-յան և գեղարվեստական ձևաստեղծման մեջ արմատավորել մարդու չափումների վրա հիմնված *մոդուլ*: Մ. կիրառվել է Լը Կորբյուզիեի նախագծած մի շարք կառույցներում և իր որոշակի ազդեցությունն ունեցել համաշխարհային ճարտ-յան և հատկապես դիզայնի վրա:

*Գրկ.* Ле Корбюзье Ш. Э., Архитектура 20 века, пер. с франц., [М.], 1970.

**ՄՈԴՈՒԼՈՒՄ** ֆ ի զ ի կ ա յ ու մ և տ ե խ ն ի կ ա յ ու մ, կանոնավոր կամ պարբերական պրոցեսը բնութագրող այս կամ այն պարամետրի փոփոխումը (կառավարումը) ժամանակի ընթացքում հայտնի օրենքով՝ արտաքին ազդեցության միջոցով: Մ-ման օրինակներ են շատրվանի կամ ցուցափեղկի լուսավորումը լուսատուի փոփոխվող պայծառությամբ և գույների հաջորդմամբ՝ գեղագիտական նկատառումներով, կլիստրոնի և մագնետրոնի էլեկտրոնային փնջի արագության փոփոխումը՝ գերբարձր հաճախականության տատանումների ստացման նպատակով են: Առավել տարածված է ինֆորմացիայի հաղորդման նպատակով էլեկտրական և էլեկտրամագնիսական տատանումների Մ.: Տես նաև *Մոդուլում լույսի* և *Մոդուլում տատանումների*: *Ռ. Ղազարյան*

**ՄՈԴՈՒԼՈՒՄ ԼՈՒՅՍԻ**, օպտիկական տիրույթի ($10^{13}$—$10^{16}$ *hg*) էլեկտրամագնիսական տատանումների *մոդուլում*: Մոդուլման ժամանակ կարելի է փոփոխել էլեկտրամագնիսական տատանումների ամպլիտուդը, ինտենսիվությունը, հաճախականությունը, փուլը կամ բևեռացումը: Քանի որ լույսի ընդունիչները (ֆոտոընդունիչները) զգում են միայն ինտենսիվությունը, ուստի մոդուլման բոլոր տեսակների դեպքում ցանկացած պարամետրի փոփոխությունները ի վերջո փոխակերպվում են ինտենսիվության մոդուլման: Տարբերում են ն ե ր ք ի ն Մ. լ., երբ լույսի այս կամ այն պարամետրի կառավարումը (մոդուլող ազդանշանով) իրագործվում է հենց լույսի աղբյուրի ներսում, և ա ր տ ա ք ի ն Մ. լ., որի դեպքում մոդուլումն ապահովվում է լուսատուից դուրս հատուկ *մոդուլյատորում*: Ներքին և արտաքին մոդուլման պարզագույն օրինակներ են լույսի աղբյուրի լուսատվության կառավարումը համապատասխանաբար լուսատուի սնման ռեժիմի փոփոխումով կամ արտաքին մեխանիկական խուփի (պտտվող սկավառակ ևն) միջոցով: Վերջինս մոդուլման հնագույն եղանակի՝ ազդանշման տարատեսակն է:




Ժամանակակից Մ. լ. ըստ ինտենսիվության իրագործում են էլեկտրական դաշտի միջոցով՝ կառավարելով որոշ բյուրեղների թողարկման շերտի հաճախային ստորին սահմանը (Ֆ ր ա ն ց-Կ ե լ դ ի շ ի ե ր և ու յ թ) կամ կիսահաղորդիչներում p—n անցման կլանումը: Մոդուլման հնարավորությունները կախված են լույսի հատկություններից. եթե սովորական (ջերմային) աղբյուրների լույսի դեպքում իմաստ ունի միայն ինտենսիվության մոդուլումը, ապա լազերի լույսը, շնորհիվ բարձր մեներանգության և կոհերենտության, թույլ է տալիս մոդուլել հաճախականությունը, փուլը կամ բևեռացումը: Այս պարամետրերի մոդուլումը կատարվում է ֆիզիկական տարբեր երևույթների հիման վրա: Այսպես, հաճախային Մ. լ. կարելի է ստանալ՝ փոփոխելով օպտիկական ռեզոնատորի երկարությունը, ասենք, պիեզոէլեկտրական կամ մագնիսաստրիկցիոն միջոցներով: Պինդ կամ գազային որոշ նյութերի վրա կիրառելով մագնիսական (*Զեեմանի երևույթ*) կամ էլեկտրական (*Շտարկի երևույթ*) դաշտ՝ կարելի է տրոհել դրանց միջով անցնող լույսի հաճախականությունը: Որոշ բյուրեղներում և հեղուկներում դիտվում է բեկման ցուցչի փոփոխություն մեխանիկական (ֆոտոառաձգականություն) կամ պիեզոէլեկտրական ազդեցությունների դեպքում: Հեռանկարային է ձայնաօպտիկական երևույթի կիրառումը Մ. լ. ստանալու համար: Այս դեպքում մեխանիկական լարվածությունները (ուստի և բեկման ցուցչի փոփոխությունները) նյութում ստեղծվում են ուլտրաձայնային տատանումների շնորհիվ: Բևեռացման մոդուլում կարելի է ստանալ՝ օգտագործելով մագնիսական դաշտի ազդեցությամբ որոշ նյութերի՝ իրենց միջով անցնող լույսի բևեռացման հարթության պտտման ընդունակությունը (Ֆ ա ր ա դ ե յ ի ե ր և ու յ թ):

Լույսի մոդուլման ամենատարածված տեսակը էլեկտրաօպտիկական մոդուլումն է, որի հիմքում ընկած է որոշ բյուրեղների և հեղուկների երկբեկման հատկությունը (*Քերի երևույթ*): Էլեկտրական դաշտի ազդեցությամբ այդ նյութերի բեկման ցուցիչը ձեռք է բերում անիզոտրոպություն և կախյալ է դառնում դաշտի լարվածությունից: Քանի որ ամենամեծ երկբեկմամբ հեղուկները թունավոր են (նիտրոբենզոլ) ու հերմետիկության պահանջ են առաջացնում, ուստի ամենահարմարը լույսի մոդուլումն է բյուրեղների միջոցով (Պ ո կ ե լ ս ի ե ր և ու յ թ): Պարզագույն էլեկտրաօպտիկական մոդուլման սխեման պատկերված է նկ-ում (Պոկելսի բջիջ): Լազերի փունջը *1* բևեռացուցիչից հետո դառնում է հարթ բևեռացած (ցույց է տրված սլաքով): Այնուհետև թիթեղների միջև զետեղված 2 բյուրեղի միջով անցնելիս փունջը՝ թիթեղներին կիրառված U լարման առկայությամբ երկբեկման շնորհիվ տրոհվում է բևեռացման երկու փոխուղղահայաց հարթություններով փնջերի, որոնց տարածման արագությունները բյուրեղում տարբեր են: Բյուրեղի ելքում բևեռացումը դառնում է էլիպսային, և *1* բևեռացուցչի նկատմամբ խաչաձև դասավորված *3* վերլուծիչը բաց է թողնում մուտքայինին ուղղահայաց բևեռացումով բաղադրիչը: Այսպիսով, բյուրեղում փուլային Մ. լ. փոխակերպվում է ըստ ինտենսիվության մոդուլման: Պոկելսի բջջի որոշ տարբերակներում հեշտությամբ ստացվում է հաճախային կամ բևեռացման Մ. լ.: Ինֆորմացիոն նպատակներից բացի, Պոկելսի բջիջն օգտագործում են իմպուլսային հզորությունը մեծացնելու համար: Մ. լ. լայնորեն կիրառվում է գիտական հետազոտություններում, օպտիկական լոկացիայում, օպտիկական կապի համակարգերում, օպտոէլեկտրոնիկայում, լուսահեռագրության և հեռուստատեսության մեջ: Տես նաև *Մոդուլում տատանումների*:

*Գրկ.* Мустель Е. Р., Парыгин В. Н., Методы модуляции и сканирования света, М., 1970. *Ռ. Ղազարյան*

**ՄՈԴՈՒԼՈՒՄ ՏԱՏԱՆՈՒՄՆԵՐԻ**, ֆիզիկական ցանկացած բնույթի տատանումների ամպլիտուդի, հաճախականության կամ փուլի՝ այդ տատանումների պարբերության համեմատությամբ դանդաղ փոփոխությունը որոշակի օրենքով: Համապատասխանաբար տարբերում են ա մ պ լ ի տ ու դ ա յ ի ն, հ ա ճ ա խ ա յ ի ն և փ ու լ ա յ ի ն Մ.տ. (նկ.): Կիրառվում է ռադիո- կամ օպտիկական տիրույթի էլեկտրամագնիսական ալիքների օգնությամբ ինֆորմացիայի հաղորդման համար: Կապի համակարգերում բարձր հաճախականության տատանումները մոդուլվում են հաղորդվող ցածր հաճախականության ազդանշանով: Պարզագույն դեպքում, երբ սինուսոիդային ազդանշանով մոդուլվում է A ամպլիտուդը, մոդուլված տատանումը գրի է առնվում $x=A_0(1+m\sin\Omega t)\sin(\omega t+\varphi)$ տեսքով, որտեղ $A_0$-ն սկզբնական ամպլիտուդն է, $\omega$-ն՝ կ ր ո ղ տ ա տ ա ն մ ա ն հաճախականությունը, $\Omega$-ն՝ մոդուլման հաճախականությունը, իսկ m մեծությունը, որը ցույց է տալիս ամպլիտուդի փոփոխման աստիճանը, կոչվում է մ ո դ ու լ մ ա ն խ ո ր ու թ յ ու ն: Մոդուլման $\Omega$ հաճախականությունը, որը բնութագրում է տատանումների ամպլիտուդի փոփոխման արագությունը, պետք է շատ անգամ ավելի փոքր լինի, քան կրող $\omega$ հաճախականությունը: Ամպլիտուդամոդուլված տատանումը բարձր հաճախականության տատանում է, որի սպեկտրը




Մոդուլված տատանումների սխեմատիկ պատկերումը. ա. չմոդուլված տատանում, բ. մոդուլող ազդանշան, գ. ամպլիտուդամոդուլված տատանում, դ. հաճախամոդուլված տատանում, ե. փուլամոդուլված տատանում

բացի ω-ից, պարունակում է ստորին՝ $\omega-\Omega$ և վերին՝ $\omega+\Omega$ կողային բաղադրիչներ (արբանյակներ): Մոդուլող բարդ ազդանշանի (խոսք, երգ ևն) դեպքում դրանք կազմում են կողային սպեկտրալ շերտեր: Մաթեմատիկորեն Մ. տ. վերածվում է ցածր և բարձր հաճախականության բաղադրիչների բազմապատկման: Այդ գործողությունը (հաճախականությունների փոխակերպում) իրականացվում է ոչ գծային և պարամետրական շղթաներում: Քանի որ ճառագայթվող էներգիայի զգալի մասը (~66%) ընկնում է կրող բաղադրիչին, որը մոդուլող ազդանշանի մասին ոչ մի ինֆորմացիա չի պարունակում, ապա երբեմն այն ճնշում են (բալանսային Մ. տ.) կամ հաղորդում միայն կողայիններից մեկը (միակողային Մ. տ.): Այդ տարատեսակների (հատկապես վերջինի) տեխ. իրագործումը զգալիորեն ավելի բարդ է:

Հաճախային մոդուլման դեպքում կրող հաճախականությունը ըստ մոդուլող ազդանշանի փոփոխվում է $\omega=\omega_0+\Delta\omega\cos\Omega t$ օրենքով ($\Delta\omega$-ն հաճախականության առավելագույն խոտորումն է), իսկ մոդուլված տատանումն ընդունում է $A\cos(\omega_0 t+ + \frac{\Delta\omega}{\Omega}\sin\Omega t+\varphi)$ տեսքը: $\frac{\Delta\varphi}{\Omega}$ հարաբերությունը կոչվում է հաճախային մոդուլման ինդեքս, որը, ի տարբերություն ամպլիտուդային մոդուլման m խորության, կարող է մեկից զգալի մեծ լինել: Երբ այն փոքր է մեկից, հաճախամոդուլված ազդանշանի սպեկտրը պարունակում է նույն բաղադրիչները, ինչ ամպլիտուդամոդուլվածինը: Սակայն մեծ ինդեքսի դեպքում հաճախային մոդուլման սպեկտրն անհամեմատ ավելի լայն է (հարուստ): Հաճախային մոդուլման առավելությունը մեծ խանգարումակայունությունն է, որի շնորհիվ այն կիրառվում է բարձրորակ հաղորդումներում (գերկարճալիք տիրույթում, հեռուստահաղորդումներում ևն):

Փուլային մոդուլման դեպքում կրող տատանման փուլը փոփոխվում է նույն օրենքով, ինչ հաճախայինի մոդուլման ժամանակ՝ հաճախականությունը: Արդյունքում նորից ստացվում է լայնաշերտ ազդանշան, սակայն, ի տարբերություն հաճախային մոդուլման, այս դեպքում սպեկտրի լայնությունը կախված է մոդուլող ազդանշանի հաճախականությունից: Այդ թերության պատճառով փուլային Մ. տ. համարյա չի կիրառվում:

Մոդուլման հնարավորություններն ավելի են ընդլայնվում, երբ կրող տատանումը էլեկտրամագնիսական (ռադիո- կամ լուսային) իմպուլսների հաջորդականություն է: Մոդուլող ազդանշանը կարող է փոփոխել իմպուլսների բարձրությունը կամ ամպլիտուդը, դիրքը ժամանակային առանցքի վրա, տևողությունը կամ լայնությունը, իմպուլսների կրկնման հաճախականությունը և, սկզբունքորեն, դրանց պարունակությունը կազմող (լցնող) բարձր հաճախականությունը: Համապատասխանաբար ստանում են ամպլիտուդաիմպուլսային, փուլաիմպուլսային, լայնաիմպուլսային, հաճախաիմպուլսային և բարձրահաճախաիմպուլսային Մ. տ.: Իմպուլսային Մ. տ. լայն կիրառություն է ստացել լոկացիայում ու կապի իմպուլսային համակարգերում: Տես նաև *Մոդուլում լույսի*: *Ռ. Ղազարյան*

**ՄՈԴՈՒՍ** (< լատ. modus — չափ, եղանակ, տեսակ), տրամաբանության, փիլիսոփայության և իրավագիտության (*Մոդուս պրոսեդենդի*, *Մոդուս վիվենդի*) մեջ օգտագործվող տերմին: Ավանդական տրամաբանության մեջ Մ. են անվանվում սիլլոգիզմի (մտահանգման) տարատեսակները: «Մ.» հասկացությունը, եզրակացության կանոն իմաստով, գործածվում է նաև արդի ձևական (մաթեմատիկական) տրամաբանության մեջ: Փիլիսոփայության մեջ Մ., ի տարբերություն *ատրիբուտի*, բնորոշում է առարկայի անցողիկ հատկությունը, միասնականի դրսևորման ձևերի բազմազանությունը:

**ՄՈԴՈՒՍ ՊՐՈՍԵԴԵՆԴԻ** (< լատ. modus procedendi — գործողության եղանակ), դիվանագիտական տերմին, որը կիրառվում է այս կամ այն պարտավորության կամ գործողությունների կատարման պայմանների ու կարգի վերաբերյալ համաձայնությունը նշելու համար:

**ՄՈԴՈՒՍ ՎԻՎԵՆԴԻ** (< լատ. modus vivendi — գոյության միջոց), դիվանագիտական տերմին, որով մատնանշվում է ժամանակավոր կամ նախնական համաձայնագրի կնքումը, երբ անբավարար են մշտական կամ մանրամասն համաձայնագիր կնքելու պայմանները:

**ՄՈԷՄ** (Maugham) Ուիլյամ Սոմերսեթ (25.1.1874, Փարիզ — 16.12.1965, Սեն Ժան Կապ Ֆերրա, Ֆրանսիա), անգլիացի գրող: Ծնվել է Ֆրանսիայում, բրիտ. դեսպանատան իրավաբանի ընտանիքում: Ստացել է բժշկական կրթություն: Մ-ի առաջին վեպը «Լամբեթցի Լիզան» (1897) է: Մասնակցել է առաջին համաշխարհային պատերազմին, եղել է բրիտ. հետախուզության գործակալ («Էշենդենը կամ Բրիտանական գործակալը», 1928, նովելների ժող.): Առաջին գործը, որով ճանաչվել է Մ., եղել է «Լեդի Ֆրեդերիկ» (բեմ. 1907) պիեսը: Գրել է նաև «Շրջան» (1921), «Շեպփի» (1933) դրամաները: «Լուսին և վեցպենսանոց» (1919, հայ. հրտ. 1976), «Բլիթ և գարեջուր» (1930) վեպերում Մ. մերժում է կրոնական երեսպաշտությունը, քաղքենիական այլանդակ բարքերը: Բուրժ. հոռի բարքերից ազատվելու փորձեր են ներկայացված «Ածելու սուրսայրը» (1944) վեպում: Առավելապես հայտնի է «Ստրկություն մարդկային» (1915, հայ. հրտ., հ. 1—3, 1958—59, 1965) շատ բանում ինքնակենսագրական վեպը. հերոսի բարոյական որոնումները պատկերելիս դրսևորած նուրբ պսիխոլոգիզմը զուգորդվում է աշխարհի ընդարձակ պատկերման հետ: Մ-ի ստեղծագործությունն ընթացել է քննադատական ռեալիզմի ուղիով՝ երբեմն ներառնելով նատուրալիզմի տարրեր: Նրա գեղարվեստական գործերը միշտ լարված սյուժե ունեն:

**ՄՈԶԱԻԿԱ**, տես *Խճանկարչություն*:

**ՄՈԶԱՄԲԻԿ** (Moçambique), Մոզամբիկի Ժողովրդական Հանրապետություն (República Popular de Moçambique), պետություն Աֆրիկայի հարավ-արևելքում: Սահմանակից է Տանզանիային, Մալավիին, Զամբիային, Զիմբաբվեին (Հարավային Ռոդեզիա), ՀԱՀ-ին և Սվազիլենդին: Արլ-ից ողողվում է Հնդկական օվկիանոսի ջրերով: Տարածությունը 783 հզ. *կմ²* է, բն՝. 9,9 մլն (1980): Վարչականորեն բաժանվում է 10 օկրուգի: Մայրաքաղաքը՝ Մապուտու:

**Պետական կարգը**: Մ. Ժող. հանրապետություն է: Գործող սահմանադրությունն ընդունվել է 1978-ին: Պետության և կառավարության գլուխը պրեզիդենտն է, որը նաև զինված ուժերի գլխավոր հրամանատարն է: Օրենսդրական բարձրագույն մարմինը Ժող. ժողովն է (միապալատ պառլամենտը), գործադիր իշխանության բարձրագույն մարմինը՝ Մինիստրների խորհուրդը:

**Բնությունը**: Ափագծի ընդհանուր երկարությունը մոտ 3000 *կմ* է: Հս. ափերը բարձրադիր չեն, բայց ժայռոտ են ու զառիթափ, հվ-ում՝ ցածրադիր, տեղ-տեղ՝ ճահճակալած: Ծովափի երկայնքով ձգվող կորալային խութերն ու ավազային կղզիները դժվարացնում են նավարկությունը: Երկրի հս-ում տարածվում են Արևելա-Աֆրիկյան սարահարթի հարթավայրերը (առավելագույն բարձրությունը՝ 2419 *մ*, Նամուլի լեռ): Արմ-ում վարնետվածքային Ինյանգա սանդղափուլի գագաթներն են (Բինգա լեռ, 2436 *մ*, Մ-ի ամենաբարձր կետը): Հվ-ում, ՀԱՀ-ի սահմանով ձգվում են Լեբոմբո հրաբխային լեռները, Ինյանգա սանդղափուլի դիմաց՝ Գորոնգոզա լեռնազանգվածը (1856 *մ*): Երկրի արլ. մեծ մասը զբաղեցնում է 80—400 *կմ* լայնությամբ Մոզամբիկի դաշտավայրը: Մ-ի տարածքի հիմքը կազմված է մինչքեմբրյան ապարներից (Աֆրիկական պլատֆորմի մասն է)՝ ծածկված նորագույն նստվածքային և հրաբխային ապարներով: Կան քարածխի (պաշարները՝ 700 մլն *տ*), ուրանի, երկաթի, ասբեստի, ֆոսֆորիտների, փայլարի, ոսկու, բերիլիումի, նիոբիումի և այլ հանքավայրեր:

Կլիման հս. մասում մերձհասարակածային է, հվ-ում՝ արևադարձային, պասսատային: Մոզամբիկի դաշտավայրում հունվարի միջին ջերմաստիճանը 26—30°C է, հուլիսինը՝ 15—20°C: Սարահարթում ջերմաստիճանը, համապատասխանաբար, 3—5°C-ով ցածր է: Տարեկան

տեղումները 750—1000 *մմ* են, Մոզամբիկի դաշտավայրի հս-ում և լեռների հողմակողմ լանջերին՝ ավելի քան 1500 *մմ*: Գետերը ջրառատ են, արագահոս, հարթավայրերում՝ նավարկելի: Խոշոր գետերն են Զամբեզին, Լիմպոպոն, Սավին, Ռուվուման: Մ-ի սահմաններում են Նյասա (Մալավի) և Շիրվա լճերի արլ. ափերը: Սարահարթի հս-ում տարածված են նոսր անտառները, մերձափնյա գոտու հս. մասում՝ խոնավ, Զամբեզի գետից հվ.՝ պուրակային սավաննաները, գետափերի երկայնքով՝ մշտականաչ սրահային անտառները: Կենդանական աշխարհը հարուստ է ու բազմազան: Հանդիպում են աֆրիկական փիղ, այծքաղ, զեբր, ռնգեղջյուր, առյուծ, ընձառյուծ, բորենի ևն: Շատ են օձերը, թռչունները, միջատները: Հայտնի է Գորոնգոզա ազգային պարկը:

**Բնակչությունը:** Ավելի քան 98%-ը բանտու լեզվաընտանիքի (տես *Աֆրիկյան լեզուներ*) ժողովուրդներ են: Բնակվում են նաև եվրոպացիներ ու ասիական ծագում ունեցող ժողովուրդներ, արաբներ, հնդիկներ, մուլատներ և այլք: Պաշտոնական լեզուն *պորտուգալերենն* է, տառերը՝ գրիգորյանը: Բնակչության մոտ 80%-ը պահպանում են տեղական հավատալիքները, մնացածը քրիստոնյաներ և մահմեդականներ են: Բնակչության միջին խտությունը 1 *կմ*² վրա՝ 12,7 մարդ (1980): Խիտ է բնակեցված Մապուտուի օկրուգը: Նշանակալի քաղաքներն են Մապուտուն, Բեյրան, Կելիմանեն:

**Պատմական ակնարկ:** Մ-ի հնագույն բնակիչները եղել են բուշմեններն ու հոտենտոտները, որոնց հետագայում դուրս են մղել Սուդանի հվ-ից գաղթած բանտու լեզվախմբի ցեղերը: VIII դ. Մ. են ներթափանցել արաբները: Մ. թ. I հազարամյակի վերջին — II հազարամյակի սկզբին Մ-ի տարածքում կազմավորվել են վաղ դասակարգային պետություններ (ամենամեծը Մոնոմոտապան էր): XVI դ. Մ. են ներխուժել պորտուգալացիները և գաղութացրել այն (Մ-ի ներքին շրջանների գաղութացումն ավարտվել է XX դ. սկզբին միայն): Պորտուգալիայի տնտ. հետամնացության հետևանքով 1930-ական թթ. Մ. է ներթափանցել անգլ., ապա (երկրորդ համաշխարհային պատերազմից հետո)՝ հս-ամեր. կապիտալը: 1964-ին Մ-ում սկսվել է զինված ապստամբություն՝ Մ-ի ազատագրության ճակատ (ՖՐԵԼԻՄՈ հիմնվել է 1962-ին) հայրենասիրական կազմակերպության ղեկավարությամբ: Պորտուգալիայում ֆաշիստական վարչակարգի տապալումից (1974-ի ապրիլ) հետո Մ-ում ազգային-ազատագրական պայքարը մոտեցավ իր ավարտին: 1975-ի հունիսի 25-ին Մ., Պորտուգալիայի կառավարության համաձայնությամբ, հռչակվեց անկախ պետություն՝ Մոզամբիկի Ժողովրդական Հանրապետություն (պրեզիդենտ՝ Սամորա Մաշել): 1975-ից դիվանագիտական հարաբերություններ են հաստատվել ՍՍՀՄ-ի և Մ-ի միջև, կնքվել մշակութային, գիտ., տեխ., առևտրական համագործակցության և օդային հաղորդակցության համաձայնագրեր: Մ-ի կառավարությունը վարում է մարդու կողմից մարդու շահագործումից ազատ հասարակություն ստեղծելու, օտարերկրյա մոնոպոլիաները ազգայնացնելու, հակաիմպերիալիստական քաղաքականություն, հանդես գալիս գաղութատիրության և ռասիզմի դեմ:

**Քաղաքական կուսակցությունները:** ՖՐԵԼԻՄՈ կուսակցություն, երկրի միակ՝ կառավարող կուսակցությունն է, ստեղծվել է 1977-ին՝ Մ-ի ազատագրության ճակատ (ՖՐԵԼԻՄՈ, կազմավորվել է 1962-ին) ազգային-հայրենասիրական կազմակերպության հիման վրա: ՖՐԵԼԻՄՈ կուսակցության գաղափարական հիմք է հռչակված գիտական սոցիալիզմը:

**Տնտեսա-աշխարհագրական ակնարկ:** Մ. թույլ զարգացած ագրարային երկիր է: Անկախությունից հետո ամրապնդվում է պետ. սեկտորը, կատարվում են սոցիալ-տնտ. վերափոխումներ: Հողն ու հանքային ռեսուրսները հայտարարվել են համաժողո. սեփականություն: Գյուղատնտեսության մեջ զբաղված է ինքնագործ բնակչության մոտ 70%-ը: Ծավալվում է կոոպերատիվ շարժումը (1978-ին՝ 134 արտադրական-սպառողական կոոպերատիվ): Ստեղծվում են նաև պետ. ֆիրմաներ: Մշակում են շաքարեղեգ, բամբակ, թեյ, սիզալ, բրինձ, մանիոկա, կոկոսյան արմավենի, եգիպտացորեն, գետնանուշ ևն: Անասնապահության զարգացմանը խանգարում է ցեցե ճանճը: Զբաղվում են նաև փայտամթերմամբ ու ձկնորսությամբ: Արդյունաբերությունը թույլ է զարգացած: Կարևոր ճյուղը մշակող արդյունաբերությունն է (նավթավերամշակում, գյուղատնտ. արտադրանքի մշակում ևն): Կա լեռնահանքային արդյունաբերություն: Արդյունահանում են քարածուխ, բոքսիտներ, ոսկի, արծաթ, ուրանի և բերիլիումի հանքաքար, աղ, ասբեստ: Զամբեզի գետի վրա կառուցվում է ՀԷԿ: 1978-ին արտադրվել է 7680 մլն *կվտ·ժ* էլեկտրաէներգիա: Կան ընկույզի (կեշյու) մշակման, սննդի, ծխախոտի, բամբակազտիչ, ցեմենտի, փայտամշակման, կահույքի, կարի և այլ ձեռնարկություններ:

Երկաթուղիների երկարությունը 3786 *կմ* է (1977), ավտոճանապարհներինը՝ 39,2 հզ. *կմ* (1978): Կարևոր նավահանգիստներն են Մապուտուն, Բեյրան: Միջազգա-

Տեսարան Մապուտուի առափնյա մասից

Հրապարակ Մապուտուում

յին օդանավակայաններ կան Մապուտուում, Բեյրայում, Լումբոյում:

Մ. արտահանում է բամբակի թել, անտառանյութ, շաքարի հումք, բուսական յուղ, թեյ ևն: Ներմուծում է մեքենաներ և սարքավորում, տրանսպորտային միջոցներ, նավթ, տեքստիլ, սև և գունավոր մետաղներ: Գլխավոր գործընկերներն են Պորտուգալիան, ՀԱՀ, ԱՄՆ: Գյուղատնտեսության զարգացմանն օգնում են սկանդինավյան երկրները, Նիդերլանդները, ՍՍՀՄ, ԳԴՀ, Կուբան, ԿԺԴՀ:

Դրամական միավորը էսկուդոն է, 33,2 էսկուդոն= 1 դոլլարի (1979):

**Բժշկա-աշխարհագրական բնութագիրը**: 1970—75-ին ծնունդը կազմել է 1000 բնակչին 43,0, մահացությունը՝ 20,0, մանկական մահացությունը 1000 ողջ ծնվածին՝ միջին հաշվով 150: Կյանքի միջին տևողությունը եղել է 41 տարի: Գերակշռում են վարակիչ հիվանդությունները, հատկապես՝ մալարիան, դիզենտերիան, որովայնային տիֆը, համաճարակային լյարդաբորբը, ինչպես նաև տուբերկուլոզը, բորը ևն: Անկախության հաստատումից (1975) հետո Մ-ի առողջապահությունը մեծ հաջողության է հասել: 1977-ին երկրում եղել է 35 հիվանդանոցային հիմնարկ, 253 առողջապահական կենտրոն՝ 12,2 հզ. մահճակալով (10 հզ. բնակչին՝ 12,5 մահճակալ): Արտահիվանդանոցային օգնություն են կազմակերպել հիվանդանոցների ամբուլատորային բաժանմունքները, գյուղական վայրերում՝ առողջապահական կենտրոնները և 455 կետ: 1977-ին աշխատել են 285 բժիշկ (34,0 հզ. բնակչին՝ 1 բժիշկ), 1960 բուժքույր, 430 մանկաբարձ և 500 օժանդակ բուժանձնակազմ: Բժիշկներ է պատրաստում Մապուտուի համալսարանի բժշկ. ֆակուլտետը, բուժքույրեր՝ 3 ուսումնարան: Երկրում ստեղծվել է բնակչության բժշկ. սպասարկման ծառայություն: Կանխարգելիչ բժշկության գծով գործում են վեցամսյա դասընթացներ: Բնակչության կեսը վակցինացվել է վարակիչ հիվանդությունների դեմ: 1978-ին Առողջապահության համաշխարհային կազմակերպությունը հայտարարել է, որ Մ-ում գործնականում վերացել են կարմրուկը, ծաղիկը, տուբերկուլոզը: Նույն թվականին չի արձանագրվել խոլերայի ոչ մի դեպք:

**Լուսավորությունը և գիտական հիմնարկները**: Անկախության նախօրյակին անգրագետ էր մեծահասակ բնակչության 93%-ը: 1975-ին օրենք է ընդունվել մասնավոր դպրոցներն ու մյուս ուս. հաստատություններն ազգայնացնելու մասին, ուսուցումը դարձել ձրի: Ստեղծվել է անգրագիտության վերացման ազգային վարչություն: Ձևավորվում է կրթության նոր միասնական պետ. համակարգը, որի սկզբնական օղակը մանկապարտեզներն են (3—6 տարեկանների համար): Տարրական և միջնակարգ դպրոցները (ուսուցումը՝ պորտուգալերեն) 5-ամյա են: 1977-ին արդեն կար 47 պրոֆտեխ. ուսումնարան (ՍՍՀՄ-ի օժանդակությամբ բացվել են մի շարք արդ. պրոֆտեխ. ուսումնարաններ), 1979-ին ստեղծվել են 10 մանկավարժական ուսումնարան և ուսուցիչների կատարելագործման 4 կենտրոն:



Սիզալի դաշտ երկրի հյուսիսում

1980-ին տարրական և միջնակարգ կրթության ցանցում ընդգրկված էր ավելի քան 2 մլն սովորող (1973-ին՝ 631 հզ.): Մ-ի շատ քաղաքացիներ միջնակարգ և բարձրագույն կրթություն են ստանում ՍՍՀՄ-ում և սոցիալիստական այլ երկրներում: Մապուտուում են գտնվում համալսարանը (հիմնադրվել է 1962-ին, 1976-ից՝ Է. Մոնդլանեի անվ.), ՖՐԵԼԻՄՈ-ի Կենտրոնական կուսակցական դպրոցը (1975), Կինոյի ազգ. ինստ. (1976), գիտական հետազոտությունների (1955), բամբակի հետազոտական (1962) ինստ-ները, լեռնաերկրաբանական ծառայությունը (1930), օդերևութաբանական ծառայությունը և աստղադիտարանը (1907), հիգիենայի ինստ. (1955), Ազգային (1961, 110 հզ. կտոր գիրք) և Կենտրոնական խոշոր գրադարանները Ալվարտու դի Կաստրուի (1911), հեղափոխության, Պատմության ազգային (վերջին երկուսը ստեղծվել են անկախության հաստատումից հետո) ևն թանգարաններ:

1978-ին Կուբայի օժանդակությամբ բացվել է ժող. մշակույթի տունը (առաջինը երկրում):

**Մամուլը և ռադիոհաղորդումները:** ՖՐԵԼԻՄՈ-ի օրգաններն են «Վոշ դա ռեվոլուսան» («A voz da Revolucão», պորտուգ.) հանդեսը, «Մոզամբիկ ռեվոլյուշն» («Mozambique Revolution», անգլ.) բյուլետենը:

Ռադիոհաղորդումները տրվում են պորտուգ., անգլերեն, աֆրիկյան լեզուներով:

**Գրականությունը**: Գեղարվեստական գրականությունը Մ-ում երևան է եկել XX դ. 2-րդ տասնամյակում և զարգացել երկու որոշակի ուղղությամբ՝ պրոգաղութատիրական և հակագաղութատիրական: Վերջինիս է պատկանում Ժուան Ալբազինիի «Վշտերի գիրք» (1925) արձակ գործը: Պրոպորտուգալական կողմնորոշման ստեղծագործություններ են Բ. Կամաշուի «Արտառոց պատմություններ»-ը (1934), ինչպես նաև Ռոդրիգիս Ժունիորի (ծն. 1902) և այլոց վեպերը: Գաղութատիրության դեմ հանդես եկած առաջին նշանավոր բանաստեղծը Ռ. դի Նորոնիան է (1909—43): Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Մ-ի գրականության մեջ ուժեղացել են ռեալիստական միտումները, իրականության կարևոր կողմերն արտացոլելու ձգտումը [Ժ. Կրավերինիա (ծն. 1922)]: Նոեմիա դի Սոզի (ծն. 1927) պոեզիայի թեման հպարտ և աննվաճ Աֆրիկան է: Կրակոտ հրապարակախոսությունը, հեղափոխական ու հակագաղութային պաթոսն է բնորոշ ազգային-ազատագրական շարժման գործիչ Մ. դուշ Սանտուշի (ծն. 1929) պոեզիային: Ժ. Դիաշը (1926—49) «Գոդիդո» (1952) ժողովածուի պատմվածքներում կոչ է անում ստըրկաբար չհնազանդվել ճակատագրին: Մ-ի կյանքի երևույթների ճշմարտացի պատկերն է տրված Լ. Բեռնարդու Օնվանայի (ծն. 1942) «Մենք սպանում ենք Քոսոտ Շանը» (1964) ժողովածուի պատմվածքներում:

Այժմյան փուլում գրականության մեջ գերակշռող է պոեզիան: Ա. Գեբուզայի (ծն. 1935), Ժ. Ռեբելուի (ծն. 1940), Ս. Վիեյրայի (ծն. 1941) ստեղծագործությունների հիմնական թեման շրջապատող աշխարհի վերափոխումն է:

**Ճարտարապետությունը և կերպարվեստը**: Մ-ի ժող. տները հիմնականում 2 տիպի են: Առափնյա մասերում կառուցվում են ուղղանկյուն հատակագծով շիվահյուս և կավով բոլորածեփ ձողաշեն հիմնակմախքով, խոտածածկ, երկլանջ տանիքով տներ, իսկ երկրի ներքին շըրջաններում՝ շրջանաձև հատակագծով կենտրոնասյուն, կոնաձև (հարդածածկ, եղեգնածածկ) կամ թասաձև (խոտածածկ) տանիքով հիմնակմախքային տներ: Մ-ի դեկորատիվ-կիրառական արվեստի առավել տարածված տեսակներն են՝ փայտի քանդակազարդումը, հյուսումը (շիվերով), կալեբասների՝ կալեբասի ծառի պտուղներից կամ դդումից անոթների, պատրաստումը:

*Գրկ.* [Хазанов А. М.], Политика Португалии в Африке и Азии, М., 1967; Шейнис В. Л., Португальский империализм в Африке после второй мировой войны, М., 1969; Мондлане Э., Борьба за Мозамбик, пер. с англ., М., 1972; Ряузова Е. А., Португалоязычные литературы Африки, М., 1972; Поэзия Африки, М., 1973.



Փայտե ժամանակակից քանդակ

**ՄՈԶԱՄԲԻԿԻ ՆԵՂՈՒՑ**, Աֆրիկայի և Մադագասկար կղզու միջև: Երկարությունը մոտ 1670 *կմ* է, լայնությունը՝ մոտ 925 *կմ*, խորությունը հս-ում և հվ-ում՝ ավելի քան 3000 *մ*, միջին մասում՝ 2400 *մ*: Հոսանք-

ները հիմնականում ուղղված են hս-ից հվ.: Նավահանգիստներն են Մոզամբիկը, Բեյրան, Մաձունգան:

**ՄՈԶԳՈՎ** Իվան Եփիմովիչ (ծն. 1906), սովետական անասնաբույժ-դեղաբան: Պրոֆեսոր (1939), ՀամԳԳԱ ակադեմիկոս (1956): ՍՄԿԿ անդամ 1937-ից: Ավարտել է Մոսկվայի անասնաբուժական-անասնաբուծական ինստ-ը (1930): 1938-ից Մոսկվայի անասնաբուժական ակադեմիայի դեղաբանության ամբիոնի վարիչ, միաժամանակ (1956—68)՝ ՀամԳԳԱ անասնաբուծության բաժանմունքի ակադեմիկոս-քարտուղարի տեղակալ: 1958—61-ին՝ Մոսկվայի անասնաբուժական ակադեմիայի ռեկտոր, 1961—1962-ին՝ ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրի տեղակալ: Աշխատանքները վերաբերում են դեղանյութերով կենդանիների վարակիչ և ոչ վարակիչ հիվանդությունների կանխարգելման, աճի խթանման և մթերատվության բարձրացման հարցերին: Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի 2 և Հայրենական պատերազմի II աստիճանի շքանշաններով:

*Երկ.* Фармакология, М., 1952, 5 изд., М., 1969; Антибиотики в ветеринарии, М., 1971.

**ՄՈԶԴՈԿ**, քաղաք, համանուն շրջանի վարչական կենտրոնը Հյուսիս-Օսեթական Ինքնավար Հանրապետությունում: Գտնըվում է Թերեք գետի ձախ ափին: Մոտ 37 հզ. բն. (1976): Ունի վարագույրի ֆաբրիկա, վերանորոգման-մեխանիկական, աղյուսի գործարաններ, սննդի արդյունաբերության ձեռնարկություններ, մեխանիկատեխնոլոգիական տեխնիկում, երկաթուղային կայարան: Մ-ից է սկիզբ առնում Թերեք—Կումայի ջրանցքը: Հիմնադրվել է 1763-ին, Մազդոզու (կաբարդիներեն՝ խիտ անտառ) բնակավայրում, որպես ամրակետ (ֆորպոստ) Կովկասյան ամրացված գծում:

Քաղաքավանի հիմնադրումից անմիջապես հետո Եկատերինա II կայսրուհու հրամանով Մ. են տեղափոխվել 2 հզ-ից ավելի հայեր (հիմնականում Ղզլարից), որոնք և դարձել են քաղաքի առաջին բնակիչները: Մոզդոկահայերին թույլատրվել է ունենալ դատարան, որն առաջնորդվում էր «*Աստրախանի հայոց դատաստանագրքով*», տրվել են առևտրական արտոնություններ: Հայերը բացի առևտրից (հայ վաճառականները առևտուր էին անում Աստրախանում, Նիժնի Նովգորոդում, Խարկովում և այլուր) զբաղվում էին արհեստներով (աչքի են ընկել պղնձագործները, արծաթագործները, կոշկակարները, դերձակները), այգեգործությամբ (խաղողագործությամբ): Հայտնի էին ձիաբույծներ Խաչատուր Մալբեկովը և Դավիթ Իվանովը: XIX դ. 1-ին կեսին ցարական կառավարությունը սահմանափակել է հայերի իրավունքները (ինչպես Ռուսաստանի բոլոր հայկ. գաղութներում), վերացրել դատարանը: XIX դ. վերջին Մ-ի հայերի թիվը 4000 էր (քաղաքի բնակչության 30%-ը): 1794-ին Մ-ում կար 2 հայկ. եկեղեցի, հայկ. քաղաքային ուսումնարան, մշակութային և հասարակական կազմակերպություններ: XIX դ. վերջին — XX դ. սկզբին հայերին ակտիվորեն մասնակցել են քաղաքի հեղափոխական ելույթներին:



Մոզդոկի Ս. Համբարձման հայկական եկեղեցու (XVIII—XIX դդ.) ընդհանուր տեսքը

Հայրենական մեծ պատերազմի (1941—1945) ժամանակ Մ-ի ազատագրմանը մասնակցեց 409-րդ Հայկական դիվիզիան: 1981-ին Մ-ում բնակվել է շուրջ 1000 հայ:

*Գրկ.* Հայ ժողովրդի պատմություն, հ. 4, Ե., 1972, հ. 5, Ե., 1974: Волкова И. Г., О расселении армян на Северном Кавказе до начала XX века, «ՊԲՀ», 1966, № 3.

*Վ. Խաչատրյան*

**ՄՈԶԵԼ** (ֆրանս. Moselle, գերմ. Mosel), գետ Ֆրանսիայում, Լյուքսեմբուրգում և ԳՖՀ-ում, Հռենոսի ձախ վտակը: Երկարությունը 545 *կմ* է, ավազանը՝ 28,2 հզ. *կմ²*: Սկիզբ է առնում Վոգեզներից: Հորդանում է նոյեմբերից մարտ: Տարեկան միջին ծախսը ստորին հոսանքում 290 *մ³/վրկ* է, գետաբերանում՝ մոտ 350 *մ³/վրկ*: Նավարկելի է գետաբերանից 242 *կմ*: Հատվում է Մառն—Հռենոս ջրանցքով: Արևելյան ջրանցքով միացած է Սոն գետին: Կան ՀԷԿ-եր: Մ-ի ափերին են Նանսի, Մեց, Տրիր, Կոբլենց քաղաքները: Մ-ի հովիտը խաղողագործության և գինեգործության շրջան է:

**ՄՈԶԵՐ** (Tabanidae), կարճաբեղիկ երկթևանիների ենթակարգի արյունածուծ միջատների ընտանիք: Մարմնի երկարությունը 6—30 *մմ* է՝ փափուկ մազիկներով պատված: Բերանը ծակող-ծծող տիպի է, վառ գունավորված խոշոր աչքերը զբաղվում են գլխի մեծ մասը: Թրթուրները գիշատիչ են: Արուները սնվում են ծաղիկների նեկտարով, էգերն արյունածուծ են: Ակտիվ են ցերեկները: Թրթուրները զարգանում են ջրում կամ խոնավ հողում: Հայտնի է Մ-ի շուրջ 3000 տեսակ (ՍՍՀՄ-ում՝ մոտ 250): ՀՍՍՀ-ում, գլխավորապես hս. անտառային շրջաններում, առավել տարածված են Tabanus bromius bromius, T. portschinskii, Philipomyia aprica ևն տեսակները: Մ. վնասում են անասնապահությանը (ընկնում է Մ-ի հարձակմանը ենթարկված կենդանիների կաթնատվությունը և քաշավածությունը), փոխանցում մի շարք վարակիչ հիվանդություններ (տուլարեմիա, սիբիրյան խոց ևն): Պայքարի միջոցները՝ տարածման վայրերում նավթայուղերի լճակների կազմակերպում, անհատական պաշտպանության համար՝ վախեցնող նյութեր (ռեպելենտներ):

*Հ. Տերտերյան*

**ՄՈԶԻՐ**, քաղաք Բելոռուսական ՍՍՀ-ում, Գոմելի մարզում, Պրիպյատ գետի աջ ափին: Գետային նավահանգիստ է, ունի երկաթուղային կայարան: 75 հզ. բն. (1980): Փայտամշակման և անտառատարման կենտրոն է: Կան նավթավերամշակման, մեքենաշինական, կարբելի և այլ գործարաններ, թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկություններ, մանկավարժական ինստ., պոլիտեխնիկում, բժշկ., երաժշտական ուսումնարաններ, հայրենագիտական թանգարան: Մ-ի մոտով է անցնում «Դրուժբա» նավթամուղը: Քաղաք է 1795-ից:

**ՄՈԶԼԻԻ ՕՐԵՆՔ**, կապ է հաստատում քիմիական տարրի ռենտգենյան բնութագրական ճառագայթման սպեկտրալ գծերի հաճախականության և ճառագայթող տարրի Z կարգաթվի միջև: Փորձնական ճանապարհով հայտնաբերել է անգլիացի ֆիզիկոս Հ. Մոզլին (H. Moseley, 1887—1915) 1913-ին: Ըստ Մ. օ-ի՝ համապատասխան բնութագրական գծի հաճախականության քառակուսի արմատը գծային ֆունկցիա է Z-ից, այսինքն՝ $\sqrt{\nu}$-ի (կամ $\sqrt{1/\lambda}$-ի, λ-ն ալիքի երկարությունն է) կախումը Z-ից պատկերվում է ուղիղ գծով (նկ.):




Մոզլիի դիագրամ

Այս օրենքից հետևում է, որ Z-ի աճին զուգընթաց, ռենտգենյան ճառագայթման բնութագրական սպեկտրը շեղվում է դեպի փոքր երկարության ալիքների կողմը: Հետագայում, ավելի ճշգրիտ փորձերն ի հայտ բերեցին որոշ շեղումներ գծային կախումից, որոնք դրսևորվում են M, N և O թաղանթների համար: Մ. օ. հնարավորություն է տալիս որոշել միջուկի լիցքը, եթե չափված է բնութագրական ռենտգենյան ճառագայթման ալիքի երկարությունը (հաճախականությունը):

*Է. Չուբարյան*

**ՄՈԹԱԼ**, 1. մատղաշ անասունի մազը հանած կաշի: 2. Պանրի տեսակ, որը պահվում է տիկի մեջ: Պատրաստվում է պանրի մանրուքից (որոշ վայրերում խառնում են նաև շոռ), որն ամուր սեղմում են տիկի մեջ և պահում մառանում: Երբեմն Մ. են անվանում *տիկը*:

**ՄՈԹՈՂԱՆՔ**, Ոթողանք, գավառ Մեծ Հայքի Կորճեք կամ Կորճայք նահանգում: Տարածվում էր Տիգրիսի ձախակողմյան վտակ Մեծ Զավի միջին հոսանքի ձախափնյակում: Համապատասխանում է Բեթ էլշարաբ գավառակին (այժմյան Օրամարի շրջակայքում):

*Թ. Հակոբյան*

**ՄՈԺԱՅՍԿ**, քաղաք, Մոսկվայի մարզի Մոժայսկի շրջանի կենտրոնը: Գտնվում է Մոսկվա գետի ափին: Կա երկաթուղային կայարան: 4 *կմ* հեռավորության վրա Մոժայսկի ջրամբարն է: Մոտ 23 հզ. բն. (1976): Կան սննդի արդյունաբերության,

կարի ֆաբրիկաներ, պոլիգրաֆկոմբինատ, բժշկ. գործիքների գործարան: Մ. հայտնի է 1231-ից: 1812-ին Մ-ի մոտ տեղի է ունեցել Բորոդինոյի ճակատամարտը:

**ՄՈԺԱՅՍԿԻ** Ալեքսանդր Ֆեոդորովիչ (1825—1890), ռուս հետազոտող և օդից ծանր թռչող ապարատների բնագավառի գյուտարար: Ավարտել է ծովային կադետական դպրոցը (1841): 1841—62-ը և 1879—82-ը ծառայել է ՌԾՆ-ում: 1882-ին պաշտոնաթող է եղել գեներալ մայորի կոչումով (1886-ից փոխծովակալ): 1876-ին հաջողությամբ ցուցադրել է իր մոդելների թռիչքը: 1881-ի նոյեմբ. 3-ին, Ռուսաստանում առաջինը, արտոնություն է ստացել իր հնարած «թռչող արկի» (ինքնաթիռի) համար: 1882-ին հիմնականում ավարտել է 20 և 10 *ձ. ու.* հզորության 2 շոգեմեքենայով ինքնաթիռի կառուցումը: Մ-ի թռչող ապարատը կառավարվող ինքնաթիռների ստեղծման առաջին փորձերից է:

**ՄՈՐՍԵԵՆԿՈ** Պյոտր Անիսիմովիչ (1852—1923), ռուս բանվոր-հեղափոխական: 1874—75-ին Պետերբուրգում ծանոթացել է հեղափոխական նարոդնիկների և առաջավոր բանվորների հետ (Գ. Վ. Պլեխանով, Ս. Ն. Խալտուրին և ուրիշներ): Մասնակցել է 1876-ի Կազանի ցույցին, եղել է *«Ռուս բանվորների հյուսիսային միության»* անդամ: Հեղափոխական գործունեության համար բազմիցս ձերբակալվել և աքսորվել է: *Մորոզովյան գործադուլի* (1885) կազմակերպիչներից է: Մասնակցել է 1905—07-ի հեղափոխությանը: «Պրավդա» թերթի բանվոր-թղթակիցներից էր: 1909—10-ին աշխատել է Բաքվում, 1912-ից՝ Դոնբասում, եղել է Գորլովկայի շրջանի հանքափորների 30 հզ-անոց գործադուլի (1916) ղեկավարներից: 1917—18-ին աշխատել է Բաքվում և Հյուսիսային Կովկասում: Մասնակցել է քաղաքացիական պատերազմին (1918—20): 1922-ից աշխատել է Խարկովում: Գրել է «Հուշեր: 1873—1923» (1924, վերահրտ. 1966):

**ՄՈՒՍԵԵՎ** Իգոր Ալեքսանդրովիչ [ծն. 8(21).1.1906, Կիև], բալետի սովետական արտիստ և բալետմայստեր: ՍՍՀՄ ժող. արտիստ (1953): Սովետական բեմական ժող. պարի հիմնադիրներից: 1924-ին ավարտել է Մոսկվայի պարարվեստի ուսումնարանը: Մինչև 1939-ը՝ Մեծ թատրոնի բալետային խմբի մենապարող, բեմադրել է Օրանսկու «Ֆուտբոլիստը» (Լ. Լաշչիլինի հետ), Գերտելի «Ապարդյուն նախազգուշություն» (Ա. Մեսսերերի հետ, երկուսն էլ՝ 1930-ին), Ա. Խաչատրյանի «Սպարտակ» (1958) են: 1937-ին ստեղծել և ղեկավարում է ՍՍՀՄ ժող. պարի անսամբլը: Մ-ի բեմադրություններից են՝

ՍՍՀՄ ժողովրդական պարի պետական ակադեմիական անսամբլը ելույթի պահին (բալետմայստեր՝ Ի. Մ ո ի ս և և)



«ՍՍՀՄ ժողովուրդների պարերը» (1937—1938), «Սլավոնական ժողովուրդների պարերը» (1945), «Խաղաղություն և բարեկամություն» (1953): Ստեղծել է նաև ժանրային խորեոգրաֆիկ ներկայացումների շարք՝ «Աշխարհի երկրներով», «Պարտիզանները», «Վիվա, Կուբա», «Ճանապարհ դեպի պարը» (լենինյան մրցանակ, 1967) են: ՍՍՀՄ պետ. մրցանակներ (1942, 1947, 1952):

*Գ. Ստեփանյան*

**ՄՈԻՍԻ** (Moissi) Ալեքսանդր (Սանդրո) (1880—1935), գերմանացի դերասան: Ազգությամբ ալբանացի: 1898-ից սովորել է Վիեննայի կոնսերվատորիայում (բարիտոն): Եղել է «Բուրգթեատրի» դերասան: 1904-ից աշխատել է Մ. *Ռայնհարդի* ղեկավարությամբ, 1905—33-ին՝ Գերմանական թատրոնում և «Կամերշպիլե»-ում (Բեռլին): Մ-ի պլաստիկան և ձայնի երանգների հարստությունը օգնել են ստեղծելու երազող, միայնակ մարդկանց կերպարներ (Օսվալդ, Իբսենի «Ուրվականներ»): Հիասթափված բուրժ. իրականությունից՝ ձգտել է ցույց տալ դաժան և անարդար կյանքից տառապող հերոսների ողբերգությունը՝ Համլետ (Շեքսպիրի «Համլետ»), Պրոտասով (Լ. Տոլստոյի «Կենդանի դիակ»), Իվանով (Չեխովի «Իվանով»), Ֆրանց Մոոր (Շիլլերի «Ավազակներ»): Ֆաշիստների իշխանության գլուխ անցնելուց հետո 1933-ին հեռացել է Գերմանիայից և աշխատել Ավստրիայում, Իտալիայում: Հյուրախաղերով այցելել է ՍՍՀՄ (1924, 1925):

*Գրկ.* К л ю е в В., Моисси, в сб.: Труд актера, в. 4, М., 1959.

**ՄՈԼ**, նյութի քանակի միավոր *միավորների միջազգային համակարգում*. որոշվում է ֆիզիկական համակարգում պարունակվող միանման կառուցվածքային տարրերի (ատոմ, մոլեկուլ, իոն են) քանակով: 1 Մ. պարունակում է այնքան կառուցվածքային տարր, որքան կա ածխածնի $^{12}C$ նուկլիդի՝ 0,012 *կգ* մեջ. այսինքն՝ $6.022.10^{23}$: Միջազգային նշանակումը՝ mol: Ընդունված է *գրամ-մոլեկուլի* փոխարեն:

**ՄՈԼԱԲԱԲ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Մանազկերտ գավառում: 1909-ին ուներ 10 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Մեծ մասը զոհվել են գաղթի ճանապարհին:

**ՄՈԼԱԽՈՏԵՐ**, բույսեր, որոնց աճը որոշակի հողամասերում անցանկալի է: Դրանք ճնշում են մշակվող բույսերի աճը՝ կլանելով հողից մեծ քանակությամբ ջուր և սննդանյութեր, ստվերացմամբ խանգարում են ֆոտոսինթեզին, սերմերը կամ պտուղները հաճախ պարունակում են թունավոր նյութեր, որոնք խառնվելով բերքին կամ մթերքներին, իջեցնում են վերջիններիս որակը, խանգարում դաշտային աշխատանքներին, նպաստում բույսերի հիվանդությունների ու վնասատուների տարածմանը: Մ. հասկացությունը հարաբերական է, հաճախ գյուղատնտ. որևէ կուլտուրայի ցանքեր աղբոտվում են այլ կուլտուրաներով. օրինակ, արևածաղիկը՝ ցորենի, տարեկանը կամ գարին՝ աշնանացան ցորենի, վարսակը՝ գարնանացան ցորենի ցանքերում են: Մարգագետիններում, արոտավայրերում Մ. են թունավոր, ինչպես նաև կոպիտ, ծակող և կերային ցածրարժեք բույսերը: Կան մասնագիտացված Մ., որոնք ժամանակի ընթացքում հարմարվել են մշակովի բույսերի ցանքերում և դարձել դրանց անբաժան ուղեկիցը (արջնդեղը՝ աշնանացան հացաբույսերի, որոմը՝ աշորայի, հավակնդեղը՝ բրնձի, գաղձը՝ առվույտի և երեքնուկի, ճրագախոտը՝ ծխախոտի կամ արևածաղկի ցանքերում): Մ. տարածված են ամենուրեք: Հայտնի է մի քանի հզ., ՍՍՀՄ-ում՝ 1500, ՀՍՍՀ-ում՝ 850 տեսակ:

Մ. ըստ աճման տեղի և մասնագիտացման բաժանվում են 4 խմբի՝ ցանքային, բնական հողահանդակների, աղբային, հատուկ տարածությունների: Ց ա ն ք ա յ ի ն Մ. զարգանում են գյուղատնտ. կուլտուրաների ցանքերում: Դրանց մեջ կան մասնագիտացվածներ, որոնք աճում են միայն մեկ կուլտուրայի ցանքերում: Ունեն սերունդ առաջացնելու մեծ ունակություն, բազմանում են վեգետատիվ օրգաններով և սերմերով: Բ ն ա կ ա ն հ ո ղ ա հ ա ն դ ա կ ն ե ր ի Մ-ից՝ խոտհարքների և արոտավայրերի (թունավոր, վնասակար, ցածր մթերատու), անտառային, խախտված բնական խոտածածկ ունեցող վայրերի, ջրամբարների, ջրհոսքերի և դրանց ափերի: Ա ղ բ ա յ ի ն Մ. աճում են բնակավայրերի շրջակայքում, աղբի կուտակման վայրերում: Դրանցից մի քանիսը թունավոր են, մյուսները՝ ծակող, այրող են (օրինակ, բանգին, եղինջը): Հ ա տ ու կ տ ա ր ա ծ ու թ յ ու ն ն ե ր ի Մ. դժվար է հայտնաբերել ցանքերում և սերմնանյութից անջատել: Ըստ սննդառության տիպի Մ. լինում են ոչ մակաբույծ, կիսամակաբույծ և մակաբույծ (ցողունային, արմատային): Կան նաև կարանտինային Մ.: Ըստ բազմացման, տարածման և վերականգնման Մ բաժանվում են կենսաբանական 3 տիպի սերմնային սակավամյաների, վեգետատիվ սակավամյաների և բազմամյաների: Ս ե ր մ ն ա յ ի ն ս ա կ ա վ ա մ յ ա ն ե ր ը բազմանում, տարածվում և վերականգնվում են սերմերով, պտուղներով, պտղաբույլերով: Պտղաբերում են մեկ անգամ և մահանում: Ընդգրկում են միամյա և երկամյա Մ.: Միամյաները բաժանվում են 4 ենթախմբի՝ վաղ գարնանայիններ, ուշ գարնանայիններ, աշնանայիններ և ձմեռողներ: Երկամյաներն առաջին տարում տալիս են վեգետատիվ օրգաններ, երկրորդում՝ պտղաբերում և մահանում են: Վ ե գ ե տ ա տ ի վ ս ա կ ա վ ա մ յ ա ն ե ր ը բազմանում, տարածվում և վերականգնվում են սերմերով և վեգետատիվ օրգաններով: Յուրաքանչյուր բույսի կյանքի տևողությունը 2 տարուց ավելի չէ: Ընդգրկում է պլլարավոր և սոխուկավոր Մ., որոնք ստորաբաժանվում են աշնանային, ձմեռող, գարնանային և երկամյա ենթախմբերի: Բ ա զ մ ա մ յ ա Մ-ի ստորգետնյա օրգանները երկար են ապրում, ամեն տարի առաջացնելով ընձյուղներ, որոնք 1—2 տարի հետո պտղաբերում են և մահանում: Բաժանվում են 4 խմբի՝ առանցքարմատային, ճմային, ծլարմատավոր և կոճղարմատավոր:

Մ. պտղաբեր են: Բազմացման և տարածման կենսբ. առանձնահատկությունների ճանաչման շնորհիվ հնարավոր է մշակել դրանց դեմ պայքարի և վերացման արդյունավետ միջոցառումներ: Կան Մ-ի դեմ պայքարի կանխարգելիչ և ոչնչացնող միջոցներ: Կանխարգելիչ միջոցներից են՝ սերմնանյութի մաքրումը, ոռոգման ջուրը Մ-ի սերմերից զերծ պահելը (առուների եզրերի Մ-ի ոչնչացնելը մինչև ծաղկելը և սերմնակալելը), գոմաղբի վարակազերծումը, կարանտինի պահպանումը ևն: Ոչնչացնող միջոցներ են՝ ագրոտեխնիկական, մեխանիկական, քիմ. (հերբիցիդներ), կենսաբանական:

*Գրկ.* Աղաջանյան Գ. Խ., Հայաստանի մոլախոտային բուսականությունը և պայքարը նրա դեմ, հ. 1—3, Ե., 1957—66: Կարապետյան Ռ. Ս., Հայաստանում տարածված մոլախոտերի ատլաս, Ե., 1980:

*Ն. Կարապետյան*

**ՄՈԼԱՍՆԵՐ** (ֆրանս. mollasse, < լատ. mollis — փափուկ), հզոր (մինչև մի քանի 1000 *մ* հաստության) նստվածքային ապարների շերտախումբ, որը հիմնականում կազմված է կոնգլոմերատներից, ավազաքարերից, ալևրոլիտներից, կավերից, երբեմն մերգելների և կրաքարերի մասնակցությամբ: Մ. սովորաբար պատկանում են կավճի կամ երրորդական հասակի ֆորմացիաներին: Կուտակվում են նախալեռնային և միջլեռնային զանգվածների ճկվածքային մասերում, ինչպես նաև բարձրացող լեռնազանգվածների ստորոտներում, դրանց քայքայման հետևանքով: Մ. ձևավորվում են *գեոսինկլինալների* զարգացման ավարտական փուլի ընթացքում: Լայնորեն տարածված են Ալպերում (հատկապես՝ Շվեյցարիայում), Հիմալայներում, Կարպատներում, Կովկասում, Ուրալում: Մ-ի հետ կապված են նավթի, գազի, աղի, գիպսի և այլ կարևոր օգտակար հանածոների հանքավայրեր:

**ՄՈԼԱՍՈՐԳՈ** (Sorghum halepense), դ ա ն դ ու ր դ ա ն, Ջ ո ն ս ո ն ի խ ո տ, բ ա ր ի լ ո ւ յ ս, դաշտավլուկազգիների ընտանիքի բազմամյա, կոճղարմատավոր բույս, մոլախոտ է: Ցողունի բարձրությունը՝ 1—2 *մ*, ծաղկաբույլը՝ հուրան: Կոճղարմատները հատվածավոր են, հաստ միջհանգույցներով և հանգույցներով: Դրանց հիմնական զանգվածը տարածվում է մինչև 20 *սմ*, առանձին արմատները թափանցում են մինչև 60—80 *սմ*: Բազմացումը՝ հիմնականում վեգետատիվ ճանապարհով, մասամբ՝ սերմերով: Տարածված է միջերկրածովյան երկրներից մինչև Հնդկաստան և Չինաստան, ՍՍՀՄ-ում՝ Ղրիմում, Կովկասում, Միջին Ասիայում, ՀՍՍՀ-ում՝ Արարատյան դաշտի ու նախալեռնային գոտու, ինչպես նաև Զանգեզուրի և Վայքի գոտիների ցածրադիր վայրերի ջրովի հողերում: Աղբոտում է առավելապես շարահերկ (խորդենի, բամբակ, կենաֆ), բոստան-բանջարանոցային կուլտուրաների ցանքերը, խաղողի այգիները: Պայքարի միջոցները. ագրոտեխնիկական՝ ամառային խորը վար, շարահերկ կուլտուրաների խորը և հաճախակի կուլտիվացում, քաղհան-կուլտիվացման ժամկետների ճիշտ ընտրություն, առվույտի վաղ հունձ (ընկճում և ոչնչացնում է Մ.), ցրտավար (27—30 *սմ*), առուների եզրերի բույսերի մշտական հունձ: Քիմ.՝ հերբիցիդների կիրառում:

*Ն. Կարապետյան*

**ՄՈԼԴԱՎԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆ,** Մ ո լ դ ա վ ի ա, ֆեոդալական պետություն XIV—XIX դդ.: Առաջացել է Մոլդովա գետի հովտում (այստեղից էլ՝ անունը), որպես Հունգարիայի վասալ իշխանություն: 1359-ից անկախացել է (մայրաքաղաքը Բայան էր, այնուհետև՝ Սուչավան, XVI դ. 2-րդ կեսից՝ Յասսին): Մ. ի-յան մեջ մտել են *Մոլդովան*, *Բուկովինան*, *Բեսարաբիան*: Գերագույն իշխանությունը Մ. ի-ում պատկանել է հոսպոդարին (իշխանին, առաջին իշխանը Բոգդան I էր՝ 1359—1365-ին), որը կառավարել է երկիրը բոյարական դումայի (դիվանի) օգնությամբ: XIV—XVI դդ. պաշտոնական լեզուն սլավոներենն էր, XVII դ.՝ մոլդավերենը: Իշխանությունն ամրապնդվել է *Ալեքսանդր Բարեպաշտի* օրոք (1400—32), առավել զարգացման հասել Շտեֆան Մեծի ժամանակ (1457—1504), որը երկարատև պայքար է մղել թուրքերի դեմ: XVI դարից Մ. ի. ընկել է թուրք. լծի տակ, որը տևել է 300 տարի: 1711—1821-ին երկիրը կառավարել են սուլթանի կողմից նշանակված հոսպոդարները (ընտրվել են ֆանարիոտներից՝ Կ. Պոլսի հույն հոգևոր և աշխարհիկ վերնախավի ներկայացուցիչներից): Մոլդավացիները պայքարել են իրենց անկախության համար, բազմիցս դիմել են Ռուսաստանի օգնությանը [Շտեֆան Մեծը դաշինք էր կնքել Իվան III-ի, Պյոտր (Պետրոս) Ռարեշը՝ Իվան IV-ի հետ, Պետրոս I-ի հետ ռազմ. օգնության պայմանագիր էր կնքել Դիմիտրիե Կանտեմիրը]: XVIII դ. ռուս-թուրքական պատերազմների հետևանքով թուրք. տիրապետությունը Մ. ի-ում թուլացել է: 1774-ին Ավստրիան զավթել է Բուկովինան, 1812-ին Բեսարաբիան մտել է Ռուսաստանի կազմի մեջ, 1859-ին Կարպատների և Պրուտ գետի միջև ընկած շրջանը միավորվել է Վալախիայի հետ: Մանրամասն տես *Մոլդավական ՍՍՀ*, *Ռումինիա*, Պատմական ակնարկներում:




**ՄՈԼԴԱՎԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ** (Ռեսպուբլիկա Սովետիկե Սոչիալիստե Մոլդովենյասկե), Մ ո լ դ ա վ ի ա (Մոլդովա)

Բ ո վ ա ն դ ա կ ու թ յ ու ն



**I. Ընդհանուր տեղեկություններ**

Մոլդավ. ՍՍՀ կազմվել է 1924-ի հոկտ. 12-ին՝ նախ որպես Մոլդավ. ԻՍՍՀ՝ Ուկր. ՍՍՀ-ի կազմում, 1940-ի օգոստ. 2-ին, ՍՍՀՄ-ին Բեսարաբիայի վերամիավորումից հետո, վերակազմվել է Մոլդավ. ՍՍՀ-ի: Գտնվում է ՍՍՀՄ եվրոպական մասի ծայր հվ-արմ-ում: Սահմանակից է Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետությանը և Ուկր. ՍՍՀ-ին: Տարածությունը 33,7 հզ. *կմ²* է, բն. 3968 հզ. (1980): Մայրաքաղաքը՝ Քիշնև: Վարչականորեն բաժանվում է 37 շրջանի: Ունի 21 քաղաք, 44 քտա:

Քարտեզները տես 680—681-րդ էջերի միջև՝ ներդիրում:

**II. Պետական կարգը**

Մ. համաժողովրդական պետություն է, ՍՍՀՄ կազմի մեջ մտնող սովետական սոցիալիստական հանրապետություն: Գործող սահմանադրությունն ընդունվել է 1978-ին: Պետ. իշխանության բարձրագույն մարմինը միապալատ Գերագույն սովետն է, նստաշրջանների միջև ընկած ժամանակահատվածում՝ Գերագույն սովետի Նախագահությունը: Գերագույն սովետը կազմում է կառավարություն՝ հանրապետության Մինիստրների խորհուրդ, ընդունում օրենքներ, ընտրում գերագույն դատարան ևն: Իշխանության տեղական մարմինները ժող. դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային սովետներն են: Մոլդավ. ՍՍՀ դատախազին նշանակում է ՍՍՀՄ գլխավոր դատախազը՝ 5 տարի ժամկետով:

**III. Բնությունը**

Մ. գտնվում է Արևելա-Եվրոպական հարթավայրի հվ-արմ-ում, հիմնականում Դնեստր և Պրուտ գետերի միջագետքում: Մ-ի տարածքը գետահովիտներով ու հեղեղատներով կտրտված բլրավոր հարթավայր է: Հանրապետության առավել բարձր մասը Կենտրոնա-Մոլդավական բարձրությունն է (Կոդրաներ, 429,5 *մ*): Դնեստր գետի աջ ափի երկայնքով ձգվում է Մերձդնեստրյան բարձրությունը: Մ-ի հս. մասը զբաղեցնում է Հյուսիս-Մոլդավական հարթավայրը (250—400 *մ*), հվ.՝ Հարավ-Մոլդավական հարթավայրը, որը աստիճանաբար փոխվում է Մերձսևծովյան հարթության:

**Երկրաբանական կառուցվածքը և օգտակար հանածոները:** Մ-ի տարածքը զբա-

վում է Արևելա-Եվրոպական պլատֆորմի հվ-արմ. եզրամասը: Հանրապետության հվ-ում առանձնանում է հերցինյան ծալքավոր հիմքով մարզը (Սկյութական պլատֆորմ): Այդ պլատֆորմների սահմանագծին է գտնվում յուրայի հասակի Մոլդավական իջվածքը: Արխեյի և ստորին պրոտերոզոյի գրանիտներից, չարնոկիտներից ու միգմատիտներից կազմված բյուրեղային հիմքը մերկանում է միայն հս-ում: Բյուրեղային հիմքի վրա տեղադրված է նստվածքային ապարների մինչև 6000 *մ* հզորությամբ հաստվածքը, որը ներկայացված է ավազաքարերով, կավերով, կրաքարերով, ինչպես նաև գիպս-անհիդրիտային, կայծքարաիոդային և այլ գոյացումներով: Օգտակար հանածոներից կան կրաքարեր, կավեր, ավազաքարեր, կավիճ, գիպս, մերգել, ավազներ (այդ թվում՝ ապակու), ֆոսֆորիտներ, նավթ, գազ, բենտոնիտներ:

Կլիման բարեխառն ցամաքային է, կարճատև տաք ձմեռով և երկարատև շոգ ամառով: Հուլիսի միջին ջերմաստիճանը հս-ում 19,5°C է, հվ-ում՝ 22°C, առավելագույնը՝ 41°C, հունվարինը՝ համապատասխանաբար, —5°C, —3°C, նվազագույնը՝ —36°C: Ձմռանը հաճախակի են ձնհալքները: Միջին տարեկան տեղումները հվ-ում 370—400 *մմ* են, հս-ում՝ մինչև 560 *մմ*: Տեղումների հիմնական մասը թափվում է ամռանն ու աշնանը՝ առավելապես տեղատարափ անձրևների ձևով: Վեգետացիոն շրջանը 200 օր է:

**Ներքին ջրերը**: Գետերը պատկանում են Սև ծովի ավազանին: Խոշոր գետերն են Դնեստրը (երկարությունը Մ-ի սահմաններում՝ 630 *կմ*, Ռեուտ, Բիկ, Բոտնա են վտակներով) և Պրուտը (Չուգուր, Կամենկա, Լարգան են վտակներով): Գետերի սնումը խառն է, հիմնականում անձրևային: Դնեստրի և Պրուտի հովիտներում կան լճեր: Գետերի վրա կառուցված են 50 ջրամբար և ավելի քան 1500 արհեստական լճակներ, որոնք օգտագործվում են ոռոգման և ձկնաբուծության նպատակներով:

**Հողերը, բուսական և կենդանական աշխարհը**: Հողային ծածկույթում տիրապետում են սևահողերը (Մ-ի տարածքի մոտ 80%-ը): Կան նաև գորշ, մոխրագույն անտառային, ալյուվիալ-մարգագետնային հողեր: Անտառները (կաղնի, բոխի, հաճարենի, լորենի, հացենի) զբաղվում են տարածքի 8%-ը և տարածվում են, գլխավորապես, Մ-ի կենտրոնական և հս. շրջաններում: Դնեստրի և Պրուտի գետահովիտներում կան բարդու, կաղնու, ուռենու, թեղու ճախնուտային անտառներ:

Կենդանական աշխարհին բնորոշ են այծյամը, աղվեսը, գայլը, վարազը, գորշուկը, ավելի քան 70 տեսակի թռչուններ, կրծողներ (գետնասկյուռ, համստեր, կզաքիս են): Մ-ի կենտրոնական մասի լանդշաֆտը պահպանելու նպատակով 1971-ին ստեղծվել է «Կոդրաներ» արգելանոցը (տարածությունը՝ 2,7 հզ. *հա*):

**IV. Բնակչությունը**

Հիմնական բնակիչները *մոլդավացիներն* են (2526 հզ., 1979): Բնակվում են նաև ուկրաինացիներ, ռուսներ, գագաուզներ, բուլղարներ, հրեաներ և այլք: Սովետական իշխանության տարիներին Մ-ի բնակչությունը աճել է ավելի արագ, քան միջինը երկրում: Բնակչության միջին խտությամբ (1 *կմ*² վրա 117,8 մարդ, 1980) ՍՍՀՄ-ում գրավում է առաջին տեղը: Առավել խիտ է բնակեցված Մ-ի կենտրոնական շրջանը: Քաղաքային բնակչությունը 40% է (1980): Խոշոր քաղաքներն են Քիշնևը, Տիրասպոլը, Բելցին, Բենդերին:



Ռեուտ գետի հովիտը Տրեբուժենի գյուղի մոտ



Ֆետեշտի կիրճը

**V. Պատմական ակնարկ**

Մ-ի տարածքում մարդկային բնակության հետքերը հին քարի դարից են: Էնեոլիթի շրջանում երկրամասում գերակշռել է Տրիպոլյան մշակույթը: Մ. թ. ա. IV—III դդ. այստեղ ապրել են թրակիացիները: Մ. թ. ա. II—I դդ. առաջացել են առաջին ցեղային միությունները: I—III դդ. Մ-ի տարածքի հվ. մասը գրավել են հռոմեացիները: VI—XI դդ. Մ-ի տարածքում բնակվել են նաև սլավոնական ցեղեր: Բնակչությունը հիմնականում զբաղվել է հողագործությամբ և անասնապահությամբ, զարգացել են արհեստներն ու առևտուրը, IX դարից ձևավորվել են ֆեոդալական հարաբերությունները: X դարից Մ-ի տարածքը ժամանակ առ ժամանակ մտել է Կիևյան Ռուսիայի, ավելի ուշ՝ Գալիցիա-Վոլինյան իշխանության կազմի մեջ: X—XII դդ. քոչվոր պեչենեգների և պոլովցիների արշավանքների հետևանքով սլավոն բնակչությունը այստեղից համարյա անհետացել է: XIII—XIV դդ. Մ. ընկել է մոնղոլ-թաթարների իշխանության տակ: XII, XIII դարերից պահպանվել են առաջին գրավոր տեղեկությունները (այդ թվում՝ XIIդ. հայ բժիշկ Վարդանի երկերում պահպանված հիշատակությունը) Մ-ի տարածքում վոլոխների (վալախներ)՝ մոլդավացիների նախնիների, մասին, որոնց մոտ XII—XIV դդ. զարգացել են ֆեոդալական հարաբերությունները: 1359-ին առաջացել է *Մոլդավական իշխանությունը*, որը ամրապնդվել է *Ալեքսանդր Բարեպաշտի* (ծն. թ. անհտ.—1432) և, հատկապես, Շտեֆան Մեծի (ծն. թ. անհտ.—1504) ժամանակ: XV—XVII դդ. Մ-ի բնակչության զգալի մասը ճորտացվել է: Այդ պրոցեսը շարունակվել է XVII—XVIII դդ. (մոլդավական հոսպոդարների՝ 1622-ի, 1628-ի, 1646-ի օրենսդրական ակտեր): Գյուղացիները բազմիցս ապստամբել են (1490—92, 1563, 1581, 1671—72, տես *Մուխա*, *Ս. Նալիվայկո*), փառաբանվել են (XVI—XVII դդ.) հայդուկային ջոկատները, որոնց դաշնակիցներն են եղել ուկր. կազակները: Մոլդավները մշտապես պայքարել են թուրքերի, թաթարների, լեհերի և հունգարների դեմ: 1456-ին Մ. առաջին անգամ հարկ է տվել Թուրքիային, XVI դարից ավելի է ուժեղացել կախումը նրանից (ավելի քան 300 տարի հարկ են վճարել): Թուրք. լուծը ուժեղացրել է ազգային-ազատագրական շարժումը: Ուկրաինայի հետման Բոգդան *Խմելնիցկու* բանակում մոլդավները կազմել են առանձին ջոկատներ: XVII դ. կեսից Մ. հակվել է դեպի Ռուսաստանը, բազմիցս (1656-ին, 1674-ին, 1683-ին են) դիմել հպատակության խնդրանքով: 1711-ին Պետրոս Մեծի հետ կնքվել է պայմանագիր, սակայն Մ. շարունակել է մնալ Թուրքիայի իշխանության տակ: XVIII դ. ռուս-թուրքական պատերազմների ժամանակ ռուս. զորքերը երեք անգամ (1739, 1770—74, 1788—91) ազատագրել են Մ.: 1791-ի Յասսիի հաշտության պայմանագրով Ռուսաստանին է անցել ձախափնյա Մ-ի մի մասը (Դնեստրի ձախ ափը), 1812-ի Բուխարեստի հաշտության պայմանագրով՝ Պրուտ և Դնեստր գետերի միջև ընկած տարածքը՝ Բեսարաբիան: Ռուսաստանի կազմում երկրամասն սկսել է արագորեն զարգանալ: Սակայն աշխատավոր բնակչությունը տառապել է ոչ միայն մոլդավ բոյարների սոցիալական շահագործումից, այլև ցարիզմի հետադեմ քաղաքականությունից: 1834-ին և 1846-ին կառավարությունն ընդունել է գյուղացիների և կալվածատերերի հարաբերություններ կարգավորող որոշումներ: 1861-1875-ին Բեսարաբիայում անց է կացվել գյուղացիական ռեֆորմ, որը սակայն ավելի է ուժեղացրել դասակարգային պայքարը գյուղում (1869—72-ին՝ ավելի քան 80 գյուղացիական հուզում): Ռեֆորմի հետևանքով սկսել են արագորեն զարգանալ կապիտալիստական հարաբերությունները: Առևտրի կենտրոններ են դարձել Քիշնևը, Բելցին, Իզմայիլը: Ձևավորվել են պրոլետարիատը և բազմազգ բուրժուազիան: Մ-ի հասարակական կյանքի զարգացման վրա մեծապես ազդել է ռուս. առաջավոր հասարակական միտքը: XIX դ. սկզբին Քիշնևում գործել են դեկաբրիստների «Բարօրության միությունը» և Հարավային ընկերությունը: 1870-ական թթ. առաջացել են նարոդնիկական խմբակներ, 1890-ական թթ. վերջին երկրամասում տարածվել է մարքսիզմը, սկզբնավորվել ս-դ. շարժումը: 1905—07-ի ռուս. հեղափոխության ժամանակ Մ-ում տեղի

են ունեցել միտինգներ, գործադուլներ, ցույցեր: Գյուղացիական հուզումներն ընդգրկել են ավելի քան 170 գյուղ: 1917-ի Փետրվարյան հեղափոխությունից հետո Մ-ում ևս առաջացել է երկիշխանություն: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո, 1917-ի նոյեմբեր—դեկտեմբերին Մ-ի որոշ քաղաքներում և գյուղերում իշխանությունն անցավ սովետներին: 1918-ի հունվ. 1 (14)-ին բոլշևիկների ղեկավարությամբ Քիշնևում հաստատվեց սովետական իշխանություն, որը մինչև հունվարի վերջը հաղթանակեց նաև Մ-ի ամբողջ տարածքում: Սակայն 1917 ի դեկտեմբերին բոյարական Ռումինիան, սպիտակգվարդիական և տեղական բուրժուա-ազգայնական հակահեղափոխության կենտրոնական մարմնի («Սֆատուլ ցերիի»՝ «Երկրամասի խորհուրդ») հետ գործակցած և Անտանտի աջակցությամբ, ինտերվենցիա սկըսեց և երեքամսյա պայքարից հետո, 1918-ի մարտին զավթեց Բեսարաբիան, ուր վերականգնվեց կալվածատերերի և կապիտալիստների իշխանությունը: 1918 ի նոյեմբ. 27-ին «Սֆատուլ ցերիի» որոշմամբ Բեսարաբիան մտավ Ռումինիայի կազմի մեջ: Դնեստրի ձախափնյա մասում հաստատվեց Ուկր. դիրեկտորիայի իշխանությունը: 1920-ի փետրվարին ձախափնյա Մ-ում վերջնականապես հաստատվեց սովետական իշխանություն: Ծավալվեց սոցիալիստական շինարարությունը: Ուկր. ՍՍՀ-ի այն տարածքում, որ բնակեցված էր մոլդավացիներով, 1924-ի հոկտ. 12-ին կազմավորվեց Մոլդավ. ԻՍՍՀ: Հեղափոխության և քաղաքացիական պատերազմի տարիներին իրենց անունը փառքով պսակեցին Մ-ի զավակներ Մ. Ֆրունզեն, Ս. Լազոն, Գ. Կոտովսկին, ինչպես նաև Գ. Ոսկանյանը (ծնված Գրիգորիուպոլսում), Ի. Ցակիրը, Մ. Մոլկոչանովը (1920—1921-ին՝ Հայկ. ՍՍՀ զինված ուժերի հրամանատար):

Մ-ի հիմնական մասը՝ Բեսարաբիան, մնաց Ռումինիայի կազմում: Աշխատավորները շարունակում էին պայքարել զավթիչների դեմ (տես *Թաթարբունարի ապըստամբություն 1924*): Հեղափոխական շարժումը ղեկավորում էր ընդհատակում գործող կոմկուսը: Բեսարաբիայի վիճակն ավելի ծանրացավ երկրորդ համաշխարհային պատերազմի սկզբին (Ռումինիայի ֆաշիստականացումը, պատերազմին նախապատրաստվելը), այն վերածվեց Սովետական Միության վրա հարձակման հենակետի: 1940-ի հունիսի 26-ի նոտայով ՍՍՀՄ-ը առաջարկեց Ռումինիային վերադարձնել Բեսարաբիան: Ռումինական կառավարությունը համաձայնեց: 1940-ի հունիսի 28-ին Բեսարաբիա մտան Կարմիր բանակի զորամասերը: Պայմաններ ստեղծվեցին մոլդավացիների միավորման համար: 1940-ի օգոստ. 2-ին ՍՍՀՄ Գերագույն սովետի 7-րդ նստաշրջանն օրենք ընդունեց Մոլդավ. ՍՍՀ կազմավորելու մասին: 1941-ի փետր. 10-ին ընդունվեց Մոլդավ. ՍՍՀ սահմանադրությունը (նորը՝ 1978-ին): Սակայն Մ-ում սկսված սոցիալիստական վերափոխումներն ընդհատվեցին ֆաշիստական Գերմանիայի հարձակումով: Մ-ի տարածքը ժամանակավորապես (1941—44) օկուպացվեց: Մոլդավ. ժողովուրդը ակտիվ պայքար սկսեց թըշնամու դեմ, ծավալվեց պարտիզանական շարժումը: 1944-ին, Յասսի-Քիշնևի օպերացիայի շնորհիվ, ամբողջ Մ. ազատագրվեց: 85 հզ. մոլդավացիներ պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով, 16-ին շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում:

Ետպատերազմյան տարիներին Մ-ում լայնորեն ծավալվեցին ընդհատված սոցիալիստական վերափոխումները: Վերականգնվեց սովետական պետ. և տնտ. կարգը. 1952 ին ՍՍՀՄ կառավարությունը որոշում ընդունեց «Մոլդավական ՍՍՀ սննդարդյունաբերության հետագա զարգացման մասին»: Սոցիալիստական ինդուստրացման շնորհիվ ստեղծվեց սոցիալիզմի նյութատեխնիկական բազա, ավարտվեց գյուղատնտեսության կոլեկտիվացումը: 1950-ական թթ. հետագա զարգացում ապրեցին հանրապետության տընտեսությունն ու մշակույթը, սոցիալիզմը հիմնականում կառուցվեց: Մ. վերածվեց ինդուստրիալ-ագրարային սոցիալիստական հանրապետության: Մոլդավ. ժողովուրդը համախմբվեց որպես սոցիալիստական ազգ: Զարգացած սոցիալիզմի հասարակարգի պայմաններում Մ-ի աշխատավորներն ստեղծում են կոմունիզմի նյութատեխնիկական բազա: Հանրապետությունը պարգևատրվել է Լենինի (1958), Ժողովուրդների բարեկամության (1972) և Հոկտեմբերյան հեղափոխության (1974) շքանշաններով:

**VI. Մոլդավիայի կոմունիստական կուսակցությունը**

Մ-ի կոմունիստական կուսակցությունը ՍՄԿԿ բաղկացուցիչ մասն է: Առաջին ս-դ. խմբակները Մ ում առաջացել են XIX—XX դդ. սահմանագծին: 1912-ին Քիշնևում մոլդավ բոլշևիկների ստեղծած պրավդիստական խումբը միջոցներ է հավաքել «Պրավդա»-ի հրատարակման համար, օգնել նրա տարածմանը: 1924-ի դեկտեմբերին, Մոլդավ. ԻՍՍՀ-ի կազմավորումից հետո. համամոլդավական մարզային I կուսակցական կոնֆերանսը կազմակերպչորեն ստեղծեց ՈւԿ(բ)Կ-ի Մոլդավ. մարզային կազմակերպությունը: Բեսարաբիայի ազատագրումից և Մոլդավ. ՍՍՀ-ի ստեղծումից (1940) հետո ՀամԿ(բ)Կ Մոլդավ. մարզային կուսակցական կազմակերպությունը վերափոխվեց Մ-ի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության: ՄԿ(բ)Կ I համագումարը կայացել է 1941-ի փետրվարին, Քիշնևում: Մինչև 1981-ի հունվ. 1-ը տեղի է ունեցել ՄԿԿ 14 համագումար: ՄԿԿ 4363 սկզբնական կուսակցական կազմակերպություններն ունեն կուսակցության 150349 անդամ և 8253 անդամության թեկնածու (1980-ի հունվար): ՄԿԿ ԿԿ առաջին քարտուղարն է Ս. Կ. Գրոսուն:

**VII. Մոլդավիայի լենինյան կոմունիստական երիտասարդական միությունը**

Մ-ի ԼԿԵՄ-ը ՀամԼԿԵՄ բաղկացուցիչ մասն է: Առաջին երիտասարդական հեղափոխական կազմակերպությունները Մ-ում առաջացել են 1917-ին: Կազմակերպչորեն ձևավորվել է 1925-ին՝ Մոլդավ. ԻՍՍՀ կոմերիտական կազմակերպություն, 1940-ից՝ Մ-ի ԼԿԵՄ: 5549 սկզբնական կոմերիտական կազմակերպություններն ունեն 564012 անդամ (1980-ի հունվար):

**VIII. Արհմիությունները**

Մ-ի արհմիությունները ՍՍՀՄ արհմիությունների բաղկացուցիչ մասն են: Առաջին արհմիությունները Մ-ում առաջացել են 1905—07-ի հեղափոխության շրջանում: Արհմիությունների I համամոլդավական համագումարը տեղի է ունեցել 1925-ին: 1940-ից Մոլդավ. ՍՍՀ արհմիությունները միավորվել են միասնական ճյուղային արհմիությունների մեջ: Հանրապետության արհմիութենական 8893 սկզբնական կազմակերպություններն ունեն 1936925 անդամ (1980-ի հունվար):

**IX. Ժողովրդական տնտեսությունը**

Մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը Մ. ցարական Ռուսաստանի հետամնաց ծայրամասերից էր: Սովետական իշխանության տարիներին Մ. վերածվեց ինդուստրիալ-ագրարային հանրապետության՝ զարգացած վերամշակող արդյունաբերությամբ և ինտենսիվ գյուղատնտեսությամբ: Մ. ՍՍՀՄ խաղողի (համամիութենական բերքի 20%, 1978), եգիպտացորենի, մրգի և հատապտղի, բանջարեղենի, արևածաղկի, շաքարի ճակնդեղի մշակության կարևոր շրջաններից է: Միութենական հանրապետությունների մեջ գրավում է 1-ին տեղը գինենյութերի, ֆերմենտացված ծխախոտի և վարդայուղի, 3-րդ տեղը՝ պահածոների, շաքարավազի և արևածաղկի ձեթի արտադրությամբ:

**Արդյունաբերությունը:** Սոցիալիստական շինարարության տարիներին հանրապետությունում ստեղծվել են արդյունաբերության նոր ճյուղեր՝ էլեկտրաէներգետիկական, մեքենաշինական, սարքաշինական, էլեկտրատեխնիկական, քիմ., ցեմենտի, տեքստիլ, պահածոների ևն: Արդյունաբերության համախառն արտադրանքը 1978-ին, 1940-ի համեմատությամբ, ավելացել է 45, 1913-ի համեմատությամբ՝ 262 անգամ: 1979-ին էլեկտրակայանների հզորությունը ավելի քան 2500 *Մվտ* էր: Գերակշռում են ՋԷԿ-երը (աշխատում են գլխավորապես Դոնեցկի ածխով): Առավել խոշոր էլեկտրակայաններն են՝ Մոլդավական ՊՇԷԿ, Դուբոսարիի ՀԷԿ, Քիշնևի ՋԷԿ-1 և ՋԷԿ-2, Բելցիի ՋԷԿ: Մեքենաշինական ձեռնարկությունները թողարկում են տրակտորներ, հաշվիչ մեքենաներ, սառնարաններ, լվացքի մեքենաներ, սննդարդյունաբերության տեխնոլոգիական սարքավորում (Քիշնև), գյուղատնտ. մեքենաներ (Քիշնև, Բելցի), էլեկտրաշարժիչներ, տրանսֆորմատորներ, ձուլման արտադրության սարքավորում, ավտոկցիչներ (Տիրասպոլ), էլեկտրաքերոնիչներ, լուսատեխնիկական սարքեր (Բելցի), ցածրավոլտայն էլեկտրասարքավորում, կաբելային արտադրանք (Բենդերի), կենտրոնախույս պոմպեր (Քիշնև, Ռիբնիցա) ևն:

Քիմ. արդյունաբերությունը ներկայացված է արհեստական կաշվի և ռետինատեխնիկական իրերի կոմբինատներով, կենցաղային քիմիայի, ավտոդողերի վերանորոգման (Քիշնև), քիմ. (Տիրասպոլ), կենսաքիմիական (Բելցի, Բենդերի, Ուն-

Արդյունաբերական արտադրանքի կարևոր տեսակների արտադրությունը

| Արտադրանքի տեսակներ | 1940 | 1950 | 1970 | 1979 |
|---|---|---|---|---|
| Էլեկտրաէներգիա, մլն *կվտ.ժ* | 17,2 | 99,6 | 7606,6 | 14203 |
| Խոշոր էլեկտրամեքենաներ, հատ | — | — | 371 | 1682 |
| Կենտրոնախույս պոմպեր հզ. հատ | — | 0,4 | 61,3 | 86,2 |
| Տրակտորներ, հատ | — | — | 7550 | 9886 |
| Ավտոկցիչներ, հզ. հատ | — | — | 27,9 | 31,3 |
| Լվացքի մեքենաներ, հզ. հատ | — | — | 185,9 | 241,4 |
| Կենցաղային սառնարաններ, հզ. հատ | — | — | 162,7 | 250,4 |
| Շինարարական աղյուս, մլն հատ | 7,2 | 32,9 | 170,6 | 212,7 |
| Տրիկոտաժե սպիտակեղեն և վերնազգեստ, մլն հատ | 0,06 | 1,0 | 29,7 | 55,4 |
| Կաշվե կոշիկ, մլն զույգ | 0,1 | 1,7 | 13,0 | 16,2 |
| Շաքարավազ, հզ. *տ* | 11,8 | 11,2 | 365,5 | 376,5 |
| Ձեթ, հզ. *տ* | 14,0 | 27,1 | 154,7 | 93,2 |
| Պահածոներ, մլն պայմանական տուփ | 48,5 | 81,2 | 945,7 | 1452,1 |
| Խաղողի գինի, մլն *դկլ* | 1,3 | 6,5 | 24,8 | 21,6* |

* 1978

գենի) գործարաններով: Զարգացած է շինանյութերի արդյունաբերությունը: Արտադրվում է ցեմենտ, թերթաքար (Ռիբնիցա), գիպս (Բելցի), երկաթբետոնե իրեր (Քիշնև, Բելցի, Բենդերի, Կագուլ): Կան ապակու գործարաններ (Քիշնև, Տիրասպոլ, Ֆլորեշտի), կահույքի ֆաբրիկաներ (Քիշնև, Բելցի, Տիրասպոլ, Օրգեև, Դրոկիա):

Սննդարդյունաբերությունը Մ-ի տնտեսության կարևոր ճյուղն է: Նրան բաժին է ընկնում հանրապետության ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի մոտ 48%-ը: Սննդարդյունաբերության ճյուղերի մեջ առանձնանում է գինեգործությունը, որի խոշոր ձեռնարկություններից են Բելցիի, Տիրասպոլի և Քիշնևի գինու-կոնյակի գործարանները, Քիշնևի շամպայն և տեսակավոր գինիների կոմբինատը, Չադիր Լունգայի, Կոմրատի, Ռիբնիցայի, Սորոկիի գինեգործական գործարանները: «Մոլդավգինարդ» ագրարա-արդյունաբերական միավորումը ընդգրկում է 180 այգեգործական-գինեգործական սովետական տնտեսություն-գործարաններ, որոնք արտադրում են հանրապետության գինու ավելի քան 90%-ը: Միջազգային ցուցահանդեսներում մոլդավական գինիներն ու կոնյակներն արժանացել են 246, այդ թվում՝ 113 ոսկե մեդալի: Գործում է պահածոների ավելի քան 20 գործարան (մոտ 150 անուն մրգի և բանջարեղենի պահածոներ): Շաքարի գործարանները տեղաբաշխված են Մ-ի հս-ում: Բելցիում կա ձեթօճառի կոմբինատ, Բենդերիում և Ատակիում՝ ձիթհան գործարաններ: Սննդարդյունաբերության ավանդական ճյուղերից է ծխախոտի արդյունաբերությունը: Եթերայուղերի (եղեսպակի, նարդոսի, վարդի, անանուխի) արտադրությունը կենտրոնացված է «Մոլդավեթերյուղարդ» ագրարա-արդյունաբերական միավորման 16 սովետական տնտեսություն-գործարաններում: Թեթև արդյունաբերությունն ընդգրկում է մետաքսի (Բենդերի), բամբակե գործվածքների (Տիրասպոլ), տրիկոտաժի (Քիշնև, Ռիբնիցա, Սորոկի), մորթեղենի (Բելցի), կարի արտադրանքի (Քիշնև, Տիրասպոլ, Սորոկի, Դուբոսարի), կոշիկի (Քիշնև, Բենդերի), գորգերի արտադրությունը:



Քիշնևի սառնարանների գործարանի հավաքման կոնվեյերը



Տիրասպոլի «Էլեկտրամաշ» գործարանի հավաքման արտադրամասում

**Գյուղատնտեսությունը**: 1979-ին Մ-ում կար 422 կոլտնտեսություն, 341 սովետական տնտեսություն և սովետական տնտեսություն-գործարան, 311 միջտնտեսային ձեռնարկություն: Գյուղատնտ. հանդակների տարածությունը 2,6 մլն *հա* է (1978), որից 1,8 մլն *հա* վարելահողեր են, 415 հզ. *հա*՝ բազմամյա տնկարկներ, 288 հզ. *հա*՝ արոտավայրեր: Ոռոգվում է 197 հզ. *հա* հող: Գյուղատնտեսության մասնագիտացման կարևոր ճյուղերն են այգեգործությունը և պտղաբուծությունը: Խաղողի (բերքը՝ 1378 հզ. *տ*, 1979) այգիների հիմնական զանգվածները տեղաբաշխված են հանրապետության կենտրոնական և հվ. շրջաններում: Պտղաբուծությունը զարգացած է Մերձդնեստրյան շրջանի կենտրոնական մասում և հանրապետության հս-ում: Ամենուրեք աճեցնում են աշնանացան ցորեն, եգիպտացորեն և արևածաղիկ: Հանրապետության հս-ում մշակում են շաքարի ճակնդեղ, կենտրոնական և հս. շրջաններում՝ ծխախոտ, Մերձդնեստրյան և Մերձպրուտյան շրջաններում՝ բանջարեղեն: 1980-ին Մ-ում կար 1148,6 հզ. գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 2070,4 հզ. խոզ, 1227,9 հզ. ոչխար և այծ:



«Բելցսելմաշ» գործարանում

**Տրանսպորտը**: Մ. ունի զարգացած տրանսպորտային ցանց: Հանրապետության բեռնաշրջանառության ավելի քան 70%-ը բաժին է ընկնում երկաթուղային տրանսպորտին (երկարությունը՝ 1107 *կմ*, 1979): Հիմնական երկաթուղագծերն են՝ Ռազդելնայա — Տիրասպոլ — Բենդերի — Քիշնև—Ունգենի—Բելցի—Օկնիցա — Չեռնովցի, Բելցի—Ռիբնիցա—Սլոբոդկա, Բենդերի—Բեսարաբկա—Ռենի: Ավտոճանապարհների երկարությունը 10,5



Լոբիկի հավաքը Սլոբոձեի շրջանում

Գյուղատնտեսական հիմնական կուլտուրաների ցանքատարածությունները (հզ. *հա*)

| Կուլտուրաներ | 1913* | 1940 | 1960 | 1979 |
|---|---|---|---|---|
| Ամբողջ ցանքատարածությունը, | 2072,3 | 2057,1 | 1886,2 | 1846,7 |
| այդ թվում՝ | | | | |
| Հացահատիկայիններ, | 1981,4 | 1672,2 | 822,3 | 888,9 |
| որից՝ | | | | |
| աշնանացան ցորեն | 325,0 | 447,0 | 358,0 | 408,7 |
| եգիպտացորեն | 597,4 | 841,6 | 362,2 | 306,9 |
| Տեխնիկական կուլտուրաներ, | 26,8 | 261,4 | 332,4 | 373,6 |
| այդ թվում՝ | | | | |
| արևածաղիկ | 10,2 | 178,2 | 230,5 | 170,2 |
| շաքարի ճակնդեղ | 2,4 | 4,4 | 68,4 | 109,3 |
| ծխախոտ | — | 4,9 | 14,7 | 67,0 |
| Եթերայուղատու կուլտուրաներ | — | — | 9,0 | 14,4** |
| Կարտոֆիլ | 17,5 | 28,8 | 44,6 | 40,0 |
| Բանջարեղեն | 5,3 | 10,8 | 42,2 | 68,7 |
| Խաղողի տնկարկներ | — | 118 | 220 | 251** |
| Մրգի և հատապտղի տնկարկներ | — | 81 | 158 | 164** |

* Ներկայիս սահմաններում:
** 1978:

հզ. *կմ* է, որից 8,7 հզ. *կմ*-ը՝ կոշտ ծածկով (1979): Գլխավոր ավտոխճուղիներն են Օդեսա—Տիրասպոլ—Բենդերի — Քիշնև—Բելցի—Չեռնովցի, Քիշնև—Կոտովսկ—Կոմրատ—Բոլգրադ, Տիրասպոլ—Դուբոսարի—Ռիբնիցա, Քիշնև—Կալարաշ—Ունգենի: Նավարկելի ճանապարհների (Դնեստրը և Պրուտ գետերով) ընդհանուր երկարությունը 1179 *կմ* է: Ավիագծերով Քիշնևը կապված է ՍՍՀՄ-ի 40 խոշոր քաղաքների հետ: Գործում է Շեբելինկա—Օդեսա—Քիշնև գազամուղը:

**Տնտեսական կապերը Հայկական ՍՍՀ-ի հետ**: Սովետական իշխանության տարիներին սերտ կապեր են հաստատվել Մ-ի և միութենական մյուս հանրապետությունների միջև: Հայկ. ՍՍՀ-ից Մ. ստանում է ճանապարհաշինական և հողափոր մեքենաներ, գազաեռակցման և հակահրդեհային սարքեր, «ԵրԱԶ» մակնիշի ավտոմոբիլներ, վերելակներ, երկրաֆիզիկական, էլեկտրական և չափիչ սարքեր, ուժային տրանսֆորմատորներ, ցածրավոլտ ապարատուրա, կաբել, ժամացույցներ, էլեկտրական զանգեր, լաքաներկեր և ռետինատեխնիկական իրեր, հանքային ջուր, բրդե գործվածքներ, արդուզարդի առարկաներ են: Մ. Հայկ. ՍՍՀ-ին մատակարարում է տրակտորներ, լոլիկահավաքիչ կոմբայններ, էլեկտրաբեռնիչներ, օսցիլոգրաֆներ, ձուլման մեքենաներ, այգեգործական ագրեգատներ, արատանիշեր, պոմպեր, հզորության կերպափոխիչներ, սառնարաններ, փայտամշակման հաստոցներ, բամբակե և մետաքսե


Նարդոսի հավաքը Կրիուլյանի շրջանում

գործվածքներ, մորթեղեն, շամպայնի գինենյութեր, մրգի-բանջարեղենի պահածոներ, հրուշակագործական արտադրանք են:

**X. Բժշկա-աշխարհագրական բնութագիրը**

1978-ին Մ-ում ծնունդը կազմել է 1000 բնակչին 20,1, մահացությունը՝ 9,8: Մանկական մահացությունը 1940-ի համեմատությամբ նվազել է 4,4 անգամ: Մահացության հիմնական պատճառներն են սիրտանոթային համակարգի հիվանդությունները, չարորակ նորագոյացությունները: Գործնականում վերացվել են մալարիան, տրախոման, պոլիոմիելիտը, տուբերկուլոզը, կարմրուկը, կապույտ հազը: 1978-ին Մ-ում գործել է 339 հիվանդանոցային հիմնարկ՝ 46 հզ. մահճակալով (1000 բնակչին՝ 11,6 մահճակալ), ամբուլատոր-պոլիկլինիկական 488 հիմնարկ: 1978-ին բուժկանխարգելիչ հիմնարկներում աշխատել են 11576 բժիշկ, 35312 միջին բուժաշխատող: Գործել են 4 բժշկասանիտարական մաս, բժշկ. և ֆելդշերական 456 կետ, 221 կանանց կոնսուլտացիա, մանկական պոլիկլինիկա և ամբուլատորիա, 377 դեղատուն, 46 սանէպիդկայան: Բժշկ. կադրեր է պատրաստում Քիշնևի բժշկ. ինստ-ը, միջին բուժանձնակազմ՝ բժշկ. 7 ուսումնարաններ: Գործում են բժշկ. 3 ԳՀԻ: Կա 74 առողջարան և հանգստի հիմնարկ (1978):

**XI. Ժողովրդական կրթությունը և կուլտուր-լուսավորական հիմնարկները**

Մինչև XVIII դ. կեսը Մ-ի տարածքում գործել են վանքապատկան դպրոցներ: Աշխարհիկ առաջին դպրոցները հիմնվել են 1766-ին: Ռուսաստանին Բեսարաբիայի միացումից (1812) հետո երկրամասի քաղաքներում բացվել են եռդասյա գավառական ուսումնարաններ: 1833-ին Քիշնևում հիմնվել է արական գիմնազիա, 1842-ին՝ այգեգործության ուսումնարան: 1830-ական թթ. կեսից տարածում են ստացել ծխական դպրոցները: Մայրենի լեզվով համընդհանուր կրթության հնարավորություն ստեղծվել է Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո: 1979-ին Մ-ում գործում էր 1980 նախադպրոցական հիմնարկ, տարբեր տիպի 1882 հանրակրթական դպրոց, 46 միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություն, 8 բուհ: Հիմնականում ավարտվել է անցումը համընդհանուր միջնակարգ կրթության: Բուհերն են *Քիշնևի համալսարանը*, գյուղատնտ., բժշկ., մանկավարժական, պոլիտեխնիկական, արվեստի ինստ-ները (Քիշնևում), մանկավարժական ինստ-ները Տիրասպոլում և Բելցիում: Մ-ում գործում է (1979) 2026 մասսայական գրադարան (22458 հզ. գիրք և հանդես), որոնցից խոշորներն են՝ Մոլդավ. ՍՍՀ Ն. Կ. Կրուպսկայայի անվ. պետ., Մոլդավ. ՍՍՀ ԳԱ-ի և Քիշնևի համալսարանի: Կա 35 թանգարան, այդ թվում՝ Մոլդավ. ՍՍՀ պատմագավառագիտական, Մ-ի կոմունիստական կուսակցության, Մոլդավ. ՍՍՀ Գեղարվեստական, Ռազմական փառքի, Ա. Ս. Պուշկինի տուն-թանգարան, Գ. Ի. Կոտովսկու և Ս. Գ. Լազոյի հանրապետական (բոլորն էլ Քիշնևում) են, 1858 ակումբային հիմնարկ, պիոներ-դպրոցականների 70 պալատ և տուն, պատանի բնասերների 26 և տուրիստական 7 կայան:

**XII. Գիտությունը և գիտական հիմնարկները**

**1. Բնական և տեխնիկական գիտությունները**

Մինչև XIX դ. սկիզբը Մ-ում բնական գիտությունները զարգացել են՝ կապված լեռնային գործի, արհեստների, շինարարության, այգեգործության, գինեգործության հետ: XVIII դ. Եվրոպայում հայտնի էին Ն. Միլեսկուի (Սպաֆարի), Դ. Կանտեմիրի, Ա. Խոտինսկու աշխատությունները, որոնցում արժեքավոր տեղեկություններ են պարունակվել տեղական ֆլորայի ու ֆաունայի տեսակակազմի մասին: XX դ. սկզբին Ն. Օկինշևիչը և Ի. Պաչոսկին կատարել են ֆլորիստիկական (բուսական աշխարհի), Լ. Բերգը, Ա. Բրաուները, Ն. Վիտկովսկին, Ա. Ուուշինսկին՝ ֆաունիստիկական (կենդանական աշխարհի), Ս. Գրուշինսկին, Տ. Չորբան, Մ. Ռաշկովիչը՝ սոցիալ-հիգիենայի բնույթի աշխատանքներ, Վ. Կոսակովսկին, Ա. Կոցովսկին, Ի. Շեպտելիչ-Խերցեսկոն հրատարակել են առաջին գիտահետազոտական աշխատանքները հոգեբուժության վերաբերյալ:

Մ-ում բնական գիտությունների ողջ համալիրի զարգացման համար իրական հնարավորություններ ստեղծվեցին սովետական կարգերի հաստատումից հետո միայն: Կենսաբանության, քիմիայի, ագրոնոմիայի, բժշկության բնագավառների հիմնական հետազոտությունները ներկայումս կատարվում են Մոլդավ. ՍՍՀ ԳԱ գիտ. 6 հիմնարկներում, գյուղատնտ. գիտա-արտադրական 13 միավորումում, բժշկ. 3 ԳՀԻ-ներում, 5 բուհում: ՀամԳԳԱ ակադեմիկոս Ն. Դիմոյի ղեկավարությամբ ուսումնասիրվել են հանրապետության հողերն ու կազմվել հողային քարտեզները: Մոլդավ. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոսներ Ա. Ժուչենկոն, Պ. Դվորնիկովը, Ա. Կովարսկին, Մ. Լուպաշկուն ստացել են բանջարանոցային բույսերի, ցորենի, եգիպտացորենի, սոյայի նոր բարձր բեր-

քատու սորտեր: Մշակված են այգեգործության և պտղաբուծության միկրոշրջանացման ու մասնագիտացման սկզբունքները (Պ. Ունգուրյան, Գ. Ռադ): Բուսաբանները կազմել են հանրապետության բուսական աշխարհի քարտեզը և բույսերի որոշիչը (Տ. Գեյդեման), հետազոտվում են բույսերի սաղմնային զարգացման պրոբլեմները (Ա. Չեբոտար), պտուղների անատոմիական կառուցվածքի օրինաչափությունները (Բ. Մատիենկո) ևն: Կենդանաբանները կատարել են ֆաունայի կոմպլեքս հետազոտություններ և հաշվառում (Գ. Ուսպենսկի, Ի. Գանյա), ուսումնասիրվել է վայրի և գյուղատնտ. կենդանիների, թռչունների, ձկների հիմնական խմբերի մակաբուծաֆաունան (Ա. Սպասսկի և ուրիշներ):

Համաշխարհային հռչակ ունեն Յա. Պրինցի աշխատանքները որդնալվիճի վերաբերյալ: Հիդրոկենսաբանները և ձկնաբանները որոշել են ջրամբարների և գետերի հիդրոֆաունայի կազմը և ձկնատնտեսական հնարավորությունները (Մ. Յարոշենկո):

Բժշկագիտության բնագավառում ուսումնասիրվում են սիրտ-անոթային և տարիքային ախտաբանության, ուռուցքաբանության ու արյունաբանության հարցերը (Մոլդավական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Վ. Անեստիադիի ղեկավարությամբ):

Կարևոր հետազոտություններ են կատարվում կենսաքիմիայի բնագավառում: Սինթեզվել են կենսբ. կարևոր համակարգեր մոդելավորող կոմպլեքսներ (Ա. Աբլով), գործնական կիրառում է ստացել դեղորայքային նոր պատրաստուկ՝ բրևիկոլինը (Գ. Լազուրևսկի), ստեղծվել է ռադիոհաճախային բևեռագրիչի՝ ՍՍՀՄ-ում առաջին մոդելներից մեկը (Յու. Լյալիկով):

Ուսումնասիրվում են տեխ. կիբեռնետիկայի, էներգիայի տեսակների ուղղակի փոխակերպման, էլեկտրական ներգործությունների ժամանակ ջերմա- և զանգվածափոխանցման պրոբլեմները, շինարարական կոնստրուկցիաների, ինչպես նաև սննդարդյունաբերության մեքենաների և տեխնոլոգիական սարքավորման ստեղծման հարցեր:

Մ. երկրում առաջատար տեղ է գրավում ապակե մեկուսիչով միկրոհաղորդալարերի ձուլման և ուլտրաձայնային արատանշման գործում: 1965-ից Մոլդավ. ՍՍՀ ԳԱ կիրառական ֆիզիկայի ինստ-ում հետազոտվում են մետաղների մակերևույթների չափային էլեկտրակայծային մշակման և էլեկտրակայծային լեգիրման պրոցեսների ֆիզ. բնույթն ու հիմնական օրինաչափությունները, մետաղների բարձրարագային անոդային հալման օրինաչափություններն ու դրանց ազդեցությունը էլեկտրաքիմիական չափային մշակման տեխնոլոգիական բնութագրերի վրա: Մոլդավ. ՍՍՀ ԳԱ էներգետիկական կիբեռնետիկայի բաժնում ուսումնասիրվում են կառավարման ավտոմատացված համակարգեր, էներգահամակարգերի ռեժիմների օպտիմալացման ալգորիթմներ և ծրագրեր ստեղծելու խնդիրներ, մշակվում էլեկտրահաղորդման նոր գծեր:

Հոսանքի աղբյուրների ՀամԳՀԻ-ի մոլդավ. բաժանմունքի հետազոտությունների առաջատար ուղղություններից մեկը արևի էներգիան էլեկտրականի փոխակերպելու առավել արդյունավետ ֆոտոէլեմենտների ստեղծումն է:

**2. Հասարակական գիտությունները**

Մ-ում հասարակական մտքի առաջին հուշարձանները XV—XVIII դդ. տարեգրություններն են: Հասարակական-քաղաքական գաղափարներ են պրոպագանդել տարեգիրներ Գ. Ուրեկեն, Մ. Կոստինը, Ի. Նեկուլչեն, այնուհետև լուսավորիչներ Ն. Միլեսկուն, Դ. *Կանտեմիրը*, Ա. Խոտինսկին, հայազգի Գ. *Ասաքին*, հեղափոխական-դեմոկրատ Ա. Ռուսսոն, նարոդնիկներ Զ. Արբորե-Ռալին, Ն. Զուբկու-Կոդրյանուն, գրողներ Մ. Էմինեսկուն, Կ. Ստամատի-Չուրյան, բնագետներ Ա. Կոցովսկին, Ա. Բարլադյանը և ուրիշներ: Մ-ում հասարակական մտքի զարգացման իրական հիմքեր ստեղծվել են միայն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո: Մոլդավ. ԻՍՍՀ կազմավորումից (1924) հետո երևան են եկել հասարակական մտքի պատմությանը վերաբերող մարքսիստական առաջին աշխատությունները, ուսումնասիրվել են Վ. Ի. Լենինի փիլ. ժառանգությունը, գիտական աթեիզմի պրոբլեմները: Ռումինիայի կողմից օկուպացված (1918—40) Բեսարաբիայում բուրժ. գաղափարախոսության դեմ հանդես են եկել առաջադեմ մտավորականները (Պ. Կոստանդինեսկու-Յաշ, Ա. Դոնիչ և ուրիշներ): Մոլդավ. ՍՍՀ-ում հրատարակվել են Մարքսի ու Էնգելսի հիմնական աշխատությունները, Վ. Ի. Լենինի երկերի լիակատար ժողովածուն: Մոլդավ. փիլիսոփաները (Դ. Ուրսուլ, Վ. Երմուրատսկի, Ա. Շչեգլով, Ա. Զավտուր և ուրիշներ) ուսումնասիրում են մարքս-լենինյան փիլիսոփայության, մոլդավ. փիլ. և հասարակական-քաղաքական մտքի պատմության, գիտական կոմունիզմի պատմության պրոբլեմները, կատարում սոցիոլոգիական ուսումնասիրություններ: Փիլ. հետազոտություններով զբաղվում են բուհերի փիլիսոփայության, գիտ. կոմունիզմի, մարքսիզմ-լենինիզմի ամբիոնները, Մոլդավ. ՍՍՀ ԳԱ պատմության ինստ-ի փիլիսոփայության և իրավունքի սեկտորը:

Մ-ում առաջին պատմական երկերը տարեգրություններն են: Պատմության գիտական հետազոտման հիմքերը դրել է Դ. Կանտեմիրը: Որոշակի հաջողություններ են ունեցել XIX դ. գիտնականներ Գ. Ասաքին, Մ. Կոգիլնիչանուն, Ա. Նակոն և ուրիշներ: Պատմագրության զարգացման նպաստավոր պայմաններ են ստեղծվել սովետական կարգերի հաստատումից և, հատկապես, Մոլդավ. ՍՍՀ-ի կազմավորումից հետո: Մ-ի պատմաբանները ուսումնասիրում են մոլդավ. ժողովրդի ծագման, Մ-ում ֆեոդալական պետության (Ն. Մոխով, Պ. Սովետով, Ե. Ռուսև), մոլդավա-ռուս-ուկր. կապերը, ազգային-ազատագրական շարժման պատմությունը: Հնագետները հետազոտում են նյութական մշակույթը, ազգագրագետները՝ ժողովրդի կենցաղի և հոգևոր մշակույթի, մոլդավ. ազգի կազմավորման խնդիրները: Աշխատություններ են լույս տեսել Մ-ի սոցիալ-տնտեսական զարգացման հարցերի (Ի. Բուդակ, Յա. Գրոսուլ), հեղափոխական շարժումների ու հասարակական մտքի զարգացման (Դ. Շեմյակով և ուրիշներ), սովետական իշխանության համար մղված պայքարի (Ա. Աֆտենյուկ, Ա. Եսաուլենկո, Ա. Լազարև) վերաբերյալ: Պատմագիտական հետազոտություններում նշանակալի տեղ է հատկացվում սոցիալիստական և կոմունիստական շինարարությանը: Մ-ի կոմկուսի պատմության ուսումնասիրության կենտրոնը Մ-ի կոմկուսի Կենտկոմին առընթեր կուսպատմության ինստ-ն է: Մոլդավ. պատմաբանները հրատարակել են «Մոլդավիայի կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծեր» (2 հրտ., 1968), «Մոլդավական ՍՍՀ պատմություն» (2 հրտ., h. 1—2, 1965—68), «Մոլդավացիներ» (1977), «Մոլդավական ՍՍՀ ժողովրդական տնտեսության պատմություն» (h. 1—4, 1974—78), «Մոլդավական ՍՍՀ հնագիտական քարտեզ» (պր. 1—8, 1973—76) ընդհանրացնող աշխատությունները:

Սովետական իշխանության հաստատումից հետո Մոլդավիայում ձևավորվել է մարքս-լենինյան տնտեսագիտությունը: 1920—30-ական թթ. մոլդավ. տնտեսագետներն զբաղվել են հիմնականում ժողտնտեսության սոցիալիստական վերափոխման խնդիրների լուծմամբ: 1940—50-ական թթ. տնտեսագիտական ուսումնասիրությունները գլխավորապես նվիրված էին պատերազմի հետևանքների վերացման, ժողտնտեսության առանձին ճյուղերի կոնկրետ էկոնոմիկայի, արդ. և գյուղատնտ. ձեռնարկությունների տեղաբաշխման սննդարդյունաբերության հումքային գոտիների որոշման ևն պրոբլեմների: 1960—1970-ական թթ. հետազոտվել են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, արտադրողական ուժերի տեղաբաշխման ևն խնդիրներ (Մ. Ռադուլ, Մ. Ուրսուլ, Վ. Չերվինսկի, Ա. Գուդիմ և ուրիշներ): Մեծ դեր է հատկացվում աշխատանքային ռեսուրսների նպատակահարմար օգտագործման (Ն. Ֆրոլով, Վ. Չեմբրովսկի, Ա. Կոժուխար և ուրիշներ), սոցիալիստական վերարտադրության, կապիտալ ներդրումների արդյունավետության, տնտհաշվարկի հարցերին, գյուղատնտ. ձեռնարկությունների և վերամշակող արդյունաբերության տնտ. փոխհարաբերությունների կատարելագործմանը (Ռ. Ֆեդոտովա, Գ. Սինգուր, Վ. Սիդորով, Դ. Տոն և ուրիշներ) ևն պրոբլեմների: Տընտեսագիտական կենտրոններն են՝ Մոլդավ. ՍՍՀ ԳԱ էկոնոմիկայի ինստ., Մոլդավ. ՍՍՀ Պետպլանին առընթեր պլանավորման ԳՀԻ, Մոլդավ. ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության էկոնոմիկայի և գյուղատնտեսության կազմակերպման ԳՀԻ, ճյուղային տարբեր ԳՀԻ-ների էկոնոմիկայի բաժինները, բուհերի տնտեսագիտական ֆակուլտետներն ու ամբիոնները:

Իրավագիտության զարգացումն սկսվել է Մոլդավ. ՍՍՀ-ի կազմավորումից (1940) հետո: 1945-ին Քիշնևում ստեղծվել է Համամիութենական իրավաբանական հեռակա ինստ-ի բաժանմունք, որի հիման վրա

1959-ին բացվել է Քիշնևի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը: Իրավագիտական ուսումնասիրություններով զբաղվում է Մոլդավ. ՍՍՀ ԳԱ պետության և իրավունքի սեկտորը: Հետազոտվում են պետ. իրավունքի (Պ. Սովետով, Գ. Ֆեոդորով, Յու. Տոդիկան, Վ. Լավրիկ), սոցիալիստական տնտեսության ամրապնդման, հանցագործության դեմ պայքարի (Դ. Լեոշկևիչ, Կ. Ֆլորյա, Տ. Կարպով) պրոբլեմները: Մենագրություններ են նվիրվում նաև իրավունքի այլ ճյուղերի:

**3. Գիտական հիմնարկները**

68 գիտական հիմնարկներում (ներառյալ բուհերը) ընդգրկված է 8100 գիտաշխատող (1979): Առաջատարը Մոլդավ. ՍՍՀ ԳԱ է, որի կազմում կա 18 ակադեմիկոս և 26 թղթակից անդամ (1980): Մ-ի գիտական հիմնարկները ստեղծագործական կապերի մեջ են եղբայրական հանրապետությունների և արտասահմանյան երկրների գիտական հիմնարկների հետ: Հանրապետությունում անց են կացվում միութենական ու միջազգային գիտական կոնֆերանսներ, գիտաժողովներ ևն:

**XIII. Մամուլը, ռադիոհաղորդումները, հեռուստատեսությունը**

Մ-ում գրատպությունն սկսվել է XVII դարից: Այժմ (1979) Մ-ի հրատարակչությունները լույս են ընծայում տարեկան ավելի քան 1,8 հզ. անուն գիրք և գրքույկ: Հրատարակվում են 163 թերթ, ավելի քան 77 հանդես և պարբերական այլ հրատարակություններ: Հանրապետական թերթերից են՝ «Մոլդովա սոչիալիստե» («Սոցիալիստական Մոլդավիա», 1924-ից), «Վյացա սատուլույ» («Գյուղական կյանք», 1945-ից), «Տիներիմյա Մոլդովեյ» («Մոլդավիայի երիտասարդություն», 1928-ից), «Տիներոյլ լենինիստ» («Պատանի լենինյան», 1941-ից), «Սովետսկայա Մոլդավիա» («Советская Молдавия», 1925-ից), «Մոլոդյոժ Մոլդավիի» («Молодёжь Молдавии», 1940-ից) ևն: Հանդեսներից են՝ «Կոմունիստուլ Մոլդովեյ» («Մոլդավիայի կոմունիստ», մոլդավ. և ռուս.), «Նիստրու», «Սկընտեյա լենինիստե» («Լենինյան իսկրա»), «Ֆեմեյա մոլդովեյ» («Մոլդավուհի») ևն: Քիշնևում է գտնվում Մոլդավ. ՍՍՀ հեռագրական գործակալությունը (ԱՏԵՄ): Ռադիոհաղորդումները տրվում են 1930-ից, հեռուստահաղորդումները՝ 1958-ից:

**XIV. Գրականությունը**

Մոլդավ. գրավոր գրականությանը նախորդել է հարուստ բանահյուսությունը: Քնարաէպիկական պոեզիայի խոշորագույն հուշարձանը «Միորիցա» բալլադն է: Առաջին գրավոր հուշարձանները (եկեղեցական սլավոներենով) երևան են եկել IX—X դդ. սահմանագծում: 1643-ին լույս է տեսել միտրոպոլիտ Վառլաամի (1590—1657) «Կազանիա»-ն՝ մոլդավերեն առաջին գիրքը, որը ավետարանների մեկնություն է: Հարուստ ժառանգություն են թողել XVII—XVIII դդ. մոլդավացի տարեգիրներ Գ. Ուրեկեն, Մ. Կոստինը, Ի. Նեկուլչեն: Միտրոպոլիտ Դոսիֆեյին (1624—93) է պատկանում «Լույսը մեզ է հասնում Մոսկվայից...» («Սաղմոսագիրք», չափածո, 1673) արտահայտությունը: Մոլդավ. մշակույթի ականավոր գործիչներ են եղել Ն. Միլեսկուն (Սպաֆարի, 1631—1708) և Դ. Կանտեմիրը (1673—1723): Ռուսաստանի հետ Բեսարաբիայի միավորումից (1812) հետո ընդլայնվել են մոլդավ. գրականության կապերը ռուս. և ուկր. ժողովուրդների առաջադիմական գրականության հետ: Մ-ի XIX դ. գրականության վրա նկատելի ազդեցություն են գործել դեկաբրիստների հեղափոխական գաղափարները, Քիշնևում ապրած Ա. Պուշկինի պոեզիան: XIX դ. 1-ին կեսի մոլդավացի գրողներից աչքի են ընկնում մոլդավ-ռուս-ուկր. բարեկամության ջատագով Ա. Հիժդեուն, բանաստեղծներ Կ. Կոնակին և Կ. Ստամատին: Ազգային մշակույթի մեջ նկատելի հետք է թողել մանկավարժ ու գրող Գ. Ասաքին: Դեմոկրատական ռեալիստական միտումներն են բնորոշ 1848-ի բուրժ. հեղափոխության շրջանի գրողներ Ա. Դոնիչի, Կ. Նեգրուցցիի, Ա. Ռուսսոյի, Վ. Ալեքսանդրիի ստեղծագործությանը: Գրող, պատմաբան ու բանասեր Բ. Հաժդեուն (1838—1907) մեծապես նպաստել է մոլդավ-ռուս. գրական-գիտական կապերի ամրապնդմանը: Խոր դեմոկրատականությունն ու ժողովրդականությունն են բնորոշ Յո. Կրյանգեի ստեղծագործությանը: Նրա «Հեքիաթներ»-ն ու «Մանկության հուշեր»-ը XIX դ. 2-րդ կեսի ազգային ռեալիստական արձակի գագաթնակետն են: Եվրոպական ուշ ռոմանտիզմի խոշորագույն ներկայացուցիչներից է բանաստեղծ Մ. Էմինեսկուն:

Մոլդավ. գրականությունը լիակատար ծաղկման է հասել Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո: «Մոլդովա լիտերարե» [«Գրական Մոլդավիա» (1928), 1932-ից՝ «Օկտոմբրիե» («Հոկտեմբեր»)] հանդեսում, ինչպես նաև առանձին հրատարակություններով 1920—30-ական թթ. տպագրվել են Դ. Միլևի, Ն. Մարկովի, Ի. Կաննայի, Մ. Անդրիեսկուի, Ն. Կաբակի և այլոց ստեղծագործությունները, որոնք պատկերել են հեղափոխության հերոիկան և սոցիալիզմի կառուցումը հանրապետությունում, Բեսարաբիայի աշխատավորության պայքարը հանուն վերամիավորման սովետական հայրենիքին: Թագավորական Ռումինիայի կողմից օկուպացված Բեսարաբիայում են ապրել ու աշխատել առաջադեմ գրողներ Ե. Բուկովը, Անդրեյ Լուպանը և ուրիշներ, որոնց ստեղծագործությունը կապված է եղել հեղափոխական ընդհատակի և աշխատավորության հակաֆաշիստական պայքարի հետ:

Հետպատերազմյան առաջին տարիներին Մոլդավ. ՍՍՀ-ում լույս տեսան Ե. Բուկովի «Երկիր իմ», Ա. Լուպանի «Երես առ երես», Բ. Իստրուի «Պոզոռնա», Ջ. Մենյուկի «Երգ արշալույսի», Ֆ. Պոնոմարի «Բարեկամություն», Պ. Կրուչենյուկի «Մոր խոսքը» պոեմները, որոնց մեջ արտացոլված է ժողովրդի պայքարը ընդդեմ գերմանա-ֆաշիստական զավթիչների, կոլեկտիվացումը հանրապետության աջափնյա շրջաններում, պայքարը հանուն խաղաղության: Բանաստեղծ, ակադեմիկոս Ա. Լուպանը «Սեփական բեռը» գրքի «Մայրուղիներ» բանաստեղծական շարքի համար 1975-ին արժանացել է ՍՍՀՄ պետ. մրցանակի: Մոլդավ. ՍՍՀ պետ. մրցանակով են նշվել 60—70-ական թթ. բանաստեղծական լավագույն երկերը (սոցիալիստական աշխատանքի հերոս Ե. Բուկով, Ա. Լուպան, Պ. Բոցու, Բ. Իստրու, Գ. Վիերու): Մ-ի իրականության ընդարձակ համայնապատկերն է արտացոլված Ի. Դրուցեի, Ի. Չոբանուի, Գ. Մենյուկի, Վ. Բեշլյագեի, Ի. Պոդոլյանուի, Աննա Լուպանի պատմվածքներում, վեպերում ու պիեսներում, որոնք նույնպես արժանացել են Մոլդավ. ՍՍՀ պետ. մրցանակի: Սովետական դրամատուրգիայի մեջ նկատելի երևույթ են դարձել Ի. Դրուցեի «Կասա մարե», 1960, «Մեր ջահելության թռչունները», 1972 և այլ պիեսներ: Մանուկների ու պատանիների համար են գրում Ս. Վանգելին, Գ. Վիերուն, Ա. Շալարը, Ա. Բուսույոկը, Վ. Ֆիլիպը և ուրիշներ: Թարգմանության բնագավառում հայտնի են Ի. Կրեցուն, Ա. Կոզմեսկուն, Պ. Ստարոստինը, Պ. Միհնան, Վ. Բելիստովը: Ակտիվորեն են հանդես գալիս գրաքննադատներ ու գրականագետներ Ս. Չիբոտարուն, Խ. Կորբուն, Վ. Կորոբանը, Մ. Դորգանը, Ե. Բոտեզատուն, Մ. Չիմպոյը և ուրիշներ: Մ-ում ստեղծագործում են նաև մի շարք ռուս գրողներ:

1940-ին ստեղծվել է Մոլդավ. ՍՍՀ գրողների միությունը:

Մոլդավացի ընթերցողի սեփականությունն են դարձել հայ բանահյուսությունը, հայ դասական ու ժամանակակից գրողների ստեղծագործությունները: Մոլդավ. հրատարակվել են «Հայկական հեքիաթներ»-ը (1973), «Աստղեր լեռների վրա» (1971) բանաստեղծությունների կոլեկտիվ ժողովածուն, Հ. Թումանյանի («Բանաստեղծություններ», 1969), Ա. Իսահակյանի («Քնարական տողեր», 1976), Ս. Կապուտիկյանի («Լիրիկա», 1967), Գ. Էմինի («Յոթ երգ Հայաստանի մասին», 1979) չափածո գործերը, Վ. Անանյանի («Սևանի ափին», 1954), Խ. Գյուլնազարյանի («Լավ ճանապարհորդները», 1960), Ս. Ջորյանի («Պապ թագավոր», 1960), Հ. Մաթևոսյանի («Մենք ենք, մեր սարերը», 1969), Վ. Փափազյանի («Բարեպաշտ Եղոն», 1972), Ա. Շիրվանզադեի («Չար ոգի», 1977) և ուրիշների պատմվածքները, վեպերն ու վիպակները:

Իրենց հերթին հայ գրականություն են մուտք գործել մոլդավացի գրողների երկերը: Հայերեն են թարգմանվել Վ. Վասիլակեի պատմվածքները, Գ. Վիերուի, Լ. Դամիանի, Պ. Բոցուի, Ա. Լուպանի, Ա. Բուսույոկի, Բ. Իստրուի, Վ. Տելեուկեի, Ա. Ռոշկայի և ուրիշների բանաստեղծությունները: Առանձին գրքերով լույս են տեսել «Մոլդավիայի երկնքի տակ» (1957), «Ծաղկած կեռասենի» (1969) բանաստեղծությունների, «Մոլդավական նովելներ և պատմվածքներ» (1970) ժողովածուները, Վ. Վասիլակի «Հեքիաթ ճերմակ ցլիկի մասին» (1977) վիպակը և այլ գործեր:

**XV. Ճարտարապետությունը և կերպարվեստը**

**Ճարտարապետությունը**: Մ-ի տարածքում պահպանվել են միջնադարյան ամրոցներ (Բենդերիում, 1538, Սորոկիում, 1543), վանքային անսամբլներ (Կապրիյանի, Կոնդրիցա, Ռուդ ևն), եկեղեցիներ (Ուսպենյան, XVI դ., Կաուշանիում ևն): Բեսարաբիայի՝ Ռուսաստանին միանալուց

(1812) հետո մեծ թափով զարգացել են Քիշնև, Բենդերի քաղաքները, կառուցվել են Քիշնևում՝ Կաթողիկե տաճար (1830—1835, ճարտ. Ա. Մելնիկով), կանանց գիմնազիայի շենքը (1900, ճարտ. Ա. Բեռնարդացցի), Հաղթակամար (1840, ճարտ. Ի. Զաուշկևիչ), Վերին Կուզուրեշտի գյուղում՝ եկեղեցի (1913, ճարտ. Ա. Շչուսև)


Մոլդավական ՍՍՀ Գեղարվեստական թանգարանը (XIX դ. վերջ) Քիշնևում


Մոլդավական օպերայի և բալետի թատրոնի շենքը Քիշնևում

են: Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո, 1930-ական թթ., Մոլդավ. ԻՍՍՀ-ի մայրաքաղաք Տիրասպոլում կառուցվել են երաժշտա-դրամատիկական թատրոնը (ճարտ. Գ. Գոտգոլֆ), մանկավարժական ինստ-ը (ճարտ. Պ. Պետրով), բնակելի տներ: Թագավորական Ռումինիայի կողմից օկուպացված (1918—40) Բեսարաբիայում կառուցվել են միայն «մոդեռն» ոճի առանձնատներ:

Մոլդավ. ՍՍՀ կազմավորումից (1940) հետո սկսվել է Քիշնևի և հանրապետության այլ քաղաքների վերակառուցման գլխավոր հատակագծերի մշակումը: Ֆաշիստական օկուպացիայի ժամանակ (1941—44) Մ-ի քաղաքները խիստ ավերվել են: Ետպատերազմյան տարիներին Քիշնևում կառուցվել են ճարտ. նոր անսամբլներ (Վ. Ի. Լենինի, Խաղաղության, Սովետական բանակի պողոտաներ), 1950—70-ական թվականներին՝ Մոլդավ. ՍՍՀ ԳԱ շենքը (ճարտ. Վ. Մեդնեկ), Կառավարական տունը (ճարտ. Ս. Ֆրիդլին), «Ինտուրիստ» հյուրանոցը (ճարտ-ներ՝ Ա. Գորբունցով, Վ. Մելագինով), Հանրապետական կլինիկական հիվանդանոցը (գլխավոր ճարտ. Ա. Բակլանով): Կառուցվում են 9-, 12-, 24-հարկանի շենքեր. Լայն թափ է ստացել շինարարությունը Տիրասպոլ, Բելցի, Բենդերի, Ռիբնիցա, Կահուլ ևն քաղաքներում: Տնունդ են առել Դնեստրովսկ, Կալինինսկ, Ֆրունզե ևն քաղաքատիպ ավանները:

Մոլդավ. ՍՍՀ ճարտարապետների միությունը հիմնվել է 1945-ին:

**Կերպարվեստը**: Մ-ի տարածքում հայտնաբերվել են ուշ հին քարի դարի և նոր քարի դարի արվեստի ստեղծագործություններ: Բազմազանությամբ առանձնանում է Տրիպոլյան մշակույթի (մ. թ. ա. IV—III հազարամյակներ) խեցեգործությունը (գեղանկարչական բարդ դեկորներով անոթներ, մարդկանց և կենդանիների արձանիկներ): Մ. թ. ա. II—I հազարամյակներին են վերաբերում մետաղե զարդեր, զենքեր, կավե և բրոնզե արձանիկներ: Մ. թ. VI դարից հայտնի են սլավ. ցեղերի մշակույթի հուշարձաններ: XIII—XIV դդ. դեկորատիվ-կիրառական արվեստում նկատելի է Բյուզանդիայի և մահմեդական Արևելքի արհեստների ազդեցությունը: XV—XVI դդ. ձեռագրերը զարդարվել են բուսական ռիթմիկ զարդանախշերով և ներդաշնակ գույներով առանձնացող մանրանկարներով: Կաուշանիի Ուսպենյան եկեղեցում պահպանվել են XVIII դ. որմնանկարներ (այդ թվում՝ երեցփոխների դիմանկարներ), ուր ուշ բյուզանդական և բալկանյան ավանդույթները զուգորդվել են ժող. ստեղծագործության բնորոշ գծերին: Գունային խիստ հակադրություններով և երկրաչափական մոտիվներով առանձնանում են XVIII—XIX դդ. գործերը: XIX դարից զարգացել է աշխարհիկ արվեստը, հատկապես դիմանկարի ժանրը: Հանդես են եկել պրոֆեսիոնալ նկարիչներ, հիմնադրվել է նկարչական դպրոց (1887, 1940-ից՝ հանրապետական գեղարվեստական ուսումնարան), կազմակերպվել են ցուցահանդեսներ: XIX դ. վերջին — XX դ. սկզբին *պերեդվիժնիկների* ազդեցությամբ ստեղծվել են ռեալիստական բնանկարներ, ժանրային նկարներ, դիմանկարներ (Վ. Օկուշկո, Ե. Մալեշևսկայա և ուրիշներ):

Մ-ի կերպարվեստը մեծ ծաղկում է ապրել Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո: Մոլդավ. ԻՍՍՀ արվեստը (Ա. Ֆոյնիցկու նկարները, Ե. Մերեգայի պլակատները, պատկերազարդումները) զարգացել է ռուս. և ուկր. արվեստին համընթաց: Օկուպացված Բեսարաբիայում ստեղծագործած քանդակագործ Ա. Պլամադյալայի և այլ առաջադեմ արվեստագետների ստեղծագործություններում դրսևորվել են դեմոկրատական և ռեալիստական միտումներ: Հայրենական մեծ պատերազմի տարիներին Լ. Դուբինովսկին, Մ. Գամբուրդը, Ե. Մերեգան, Բ. Նեսվեդովը գործող բանակում ստեղծել են հայրենասիրական կտավներ: Ետպատերազմյան շրջանում զարգացել են կերպարվեստի բոլոր ժանրերը: Քանդակագործության մեջ առանձնանում են Լ. Դուբինովսկու ժանրային կոմպոզիցիաները, Կ. Կոբիզևայի դիմաքանդակները, գեղանկարչության մեջ՝ Մ. Գրեկուի, Վ. Ռուսսու-Չոբանուի, Ի. Վիերուի, Գ. Սաինչուկի, Լ. Գրիգորաշենկոյի կտավները, Ա. Բարանովիչի կենցաղային նկարները, Կ. Կիտայկայի, Օ. Օուլովայի դիմանկարները, Ա. Վասիլևի, Ի. Ստեպանովի, Մ. Պատրիկի բնանկարները, գրաֆիկայում ՍՍՀՄ ժող. նկարիչ Ի. Բոգդեսկոյի հաստոցային գործերը և պատկերազարդումները, Բ. Շիրո-


Միքայել հրեշտակապետը, սրբապատկեր (XVIII դ., Մոլդավական ՍՍՀ Գեղարվեստական թանգարան, Քիշնև)

կորոդի պլակատները: Մոնումենտալ արվեստի բնագավառում գործում են քանդակագործներ Ն. Գորյունիշևը, Բ. Մարչենկոն, Ի. Կիտմանը, գեղանկարիչներ Վ. Օբուխը, Մ. Բուրյան, բեմանկարչության մեջ՝ Ա. Շուբինը, դեկորատիվ-կիրա-


Գորգ (XVIII դ. վերջ, Մոլդավական ՍՍՀ պատմագավառագիտական պետական թանգարան, Քիշնև)

ռական արվեստում՝ Ն. Կոցոֆանը, Պ. Բեսպոյասնին և ուրիշներ: 1940-ին հիմնադրվել է Մոլդավ. ՍՍՀ նկարիչների միությունը:

**XVI. Երաժշտությունը**

Մոլդավ. երաժշտ. մշակույթը երկարատև զարգացում է ապրել՝ հենվելով ազգային ինքնատիպ բանահյուսության վրա: Մոլդավների երաժշտ. բանահյուսությունը լադային կառուցվածքով բազմազան է, առավել բնորոշ են դիատոնիկ լադերը: Աշխատանքային, ծիսական և կենցաղային երգերի կողքին տարածված են սոցիալական բողոքի (հայդուկային, բատրակային ևն) երգերը: Մոլդավ. ժող. երաժշտ. ժանրերի մեջ ուրույն տեղ ունի *դոյնան*: Ժող. պարային երաժշտությունը կրակոտ է, ռիթմիկ: Նվագարաններից են՝ ֆլուեր, կավալ, նայ, չիմպոյ ևն, հնուց ի վեր ժող. նվագարանների շարքն է դասվել ջութակը: Մոլդավ. ժող. երաժշտության ավանդույթների կրողներն են լեուտարները («լեուտա» կամ «ալեուտա» լյուտնյանման հնագույն գործիքի անվանումից): Միջին դարերում պրոֆեսիոնալ երաժշտ. արվեստը զարգացել է մենաստաններում, իշխանական պալատներում և զինվորականության շրջանում: 1880-ին Քիշնևում կազմակերպվել է երաժշտասեր-

ների ընկերություն («Հարմոնիա»): Մոլդավ. պրոֆեսիոնալ երաժշտ. արվեստի առաջին ներկայացուցիչներից է կոմպոզիտոր, բանահավաք և խմբավար Գ. Մուզիչեսկուն:

Մոլդավ. ԻՍՍՀ կազմավորումից (1924) հետո երևան են եկել կատարողական կոլեկտիվներ («Դոյնա» երգչախմբային կապելլա, 1930, սիմֆոնիկ նվագախումբ, 1935, Մոլդավ. երաժշտա-դրամատիկական թատրոն, 1939, բազմաթիվ ինքնագործ խմբեր): Մ-ի երաժշտ. մշակույթի զարգացման նոր հնարավորություններ ստեղծվեցին Մոլդավ. ՍՍՀ կազմավորումից (1940) հետո: Հիմնադրվել են կոմպոզիտորների միություն, ֆիլհարմոնիա, կոնսերվատորիա, ետպատերազմյան տարիներին՝ «Ֆլուերաշ» ժող. գործիքների անսամբլը (1946), «Մուզուրել» ժող. երգի անսամբլը (1967), կատարողական կոլեկտիվներ Մոլդավ. ՍՍՀ ռադիոհաղորդումների և հեռուստատեսության կոմիտեին կից: 1957-ին հիմնադրվել է օպերայի և բալետի թատրոնը, բացվել են երաժշտ. ուսումնական նոր հաստատություններ: Մեծ զարգացում է ապրում կոմպոզիտորական ստեղծագործությունը: Նշանակալի են Դ. Գերշֆելդի «Գրոզովան» (1956), Ա. Ստիրչայի «Դոմնիկայի սիրտը» (1960, 3-րդ խմբ. «Հերոսական բալլադ», 1970), Գ. Նյագայի «Գլիրա» (1974) օպերաները: Ազգային սիմֆոնիզմի հիմնադիրն է Շ. Նյագան («Պոեմ Դնեստրի մասին», 1943, ջութակի կոնցերտ, 1943, վոկալ-սիմֆոնիկ ստեղծագործություններ): Լարային առաջին կվարտետների հեղինակ է Ե. Կոկան: Սիմֆոնիկ ստեղծագործությունների հեղինակներից են Լ. Գուրովը, Վ. Պոլյակովը, Գ. Նյագան, Վ. Զագորսկին, երգի և ռոմանսի՝ Ա. Ստիրչան, Շ. Արանովը, Դ. Գեորգիցեն, մանկական երաժշտության՝ Զ. Տկաչը: Նշանավոր կատարողներից են՝ երգիչներ Թ. Չեբանը, Մ. Բիեշուն, Ն. Սուլակը, դիրիժոր Տ. Գուրտովոյը, ջութակահար Ս. Լունկևիչը: Հանրապետությունում անցկացվում են երաժշտ. փառատոներ:

**XVII. Թատրոնը**

Մ-ի թատերարվեստի տարրեր են պարունակել ժող. հին ծեսերն ու խաղերը: XIV դարից ելույթներ են ունեցել պալատական և թափառաշրջիկ թատերախմբեր, զարգացել է ժող. թատրոնը: Ազգային թատրոնի զարգացման անհրաժեշտ պայմաններ երևան են եկել XIX դ.: 1816-ին մոլդավ. թատրոնի հիմնադիր Գ. Ասաքին բեմադրել է առաջին ներկայացումը, 1840-ից Յասսիում գործել է մոլդավ. առաջին պրոֆեսիոնալ թատրոնը: Ազգային թատրոնի հաստատմանը նպաստել են դրամատուրգներ Վ. Ալեքսանդրին, Կ. Նեգրուցցին, Ա. Ռուսսոն, Մ. Կոգելնիչյանուն և ուրիշներ: Մ-ում դերասանական արվեստի ռեալիստական դպրոցի հիմնադիրը եղել է Մ. Միլլոն: Մ-ի թատերարվեստը ծաղկում է ապրել սովետական իշխանության հաստատումից հետո: Մոլդավ. ԻՍՍՀ-ում լայնորեն զարգացել են դրամատիկական խմբակները, որոնց հիման վրա 1927-ին Բալթայում ստեղծվել է երաժշտա-դրամատիկական թատերախումբ, հետագայում՝ դրամատիկական ստուդիա (1930-ից՝ Տիրասպոլում, 1932-ից՝ Օդեսայում): 1933-ին Տիրասպոլում բացվել է մոլդավ. դրամատիկական թատրոնը (1939-ից՝ երաժշտա-դրամատիկական, 1957-ից՝ Պուշկինի անվ. մոլդավ. երաժշտա-դրամատիկական թատրոն, Քիշնև): Գործում են նաև Քիշնևի Չեխովի անվ. ռուս. դրամատիկական (հիմնադրվել է 1934-ին, Տիրասպոլում), «Լուչաֆերուլ» հանրապետական (1960), «Լիկուրիչ» տիկնիկների (1945, երկուսն էլ Քիշնևում), Վ. Ալեքսանդրիի անվ. երաժշտա-դրամատիկական (1957, Բելցի), ռուս. դրամատիկական (1970, Տիրասպոլ) և այլ թատրոններ: 1950-ական թթ. թատրոնները մեծ ուշադրություն են դարձրել մոլդավ. դասական դրամատուրգիային («Սկեսուր երեք հարսներով», ըստ Յո. Կրյանգեի, Վ. Ալեքսանդրիի «Կիրիցան Յասսիում», երկուսն էլ՝ 1957, ևն): Մ-ի թատերարվեստը աչքի է ընկնում ստեղծագործական հասունությամբ, խաղացանկում առաջատար տեղ է գրավում ազգային դրամատուրգիան, որի մի շարք ստեղծագործություններ բեմադրվել են նաև ՍՍՀՄ այլ թատրոններում: Բեմադրություններից են Ա. Լուպանի «Ժամանակի անիվը», Շեքսպիրի «Արքա Լիր» (երկուսն էլ՝ 1961), Ի. Դրուցեի «Կասա մարե» (1962, բեմադրվել է նաև հայկ. հեռուստատեսությամբ, 1973) և «Մեր ջահելության թռչունները» (1973, բեմադրվել է նաև Գ. Սունդուկյանի անվ. թատրոնում, 1972), Գ. Մալարչուկի «Ինձ բարություն մի արեք» (1963), Մ. Շտեֆենեսկուի «Էմինեսկու» (1966), Վ. Ալեքսանդրիի «Բլանդուզիայի շատրվանը» (1967), Ի. Պոդոլյանուի «Հողը» (1970), Ի. Կարաջալեի «Կառնավալ» (1978), Ա. Պապայանի «Աշխարհն, այո, շուռ է եկել» (1979): 1958-ին ստեղծվել է Մոլդավական թատերական ընկերությունը: Գ. Մուզիչեսկուի անվ. արվեստի ինստ-ում (Քիշնև) բացվել են դերասանական (1958) և ռեժիսորական (1967) ֆակուլտետներ: Թատերական նշանավոր գործիչներից են դերասաններ, ՍՍՀՄ ժող. արտիստներ Ժ. Դարիենկոն, Ն. Մասալսկայան, Ե. Ուրեկեն, Կ. Շտիրբուլը, Մոլդավ. ՍՍՀ ժող. արտիստներ Մ. Ապոստոլովը, Պ. Բարակչին, Ա. Պլացինդան, ռեժիսորներ, Մոլդավ. ՍՍՀ ժող. արտիստներ Վ. Գերլակը, Վ. Կուպչան, Ի. Շկոտյան, նկարիչներ, Մոլդավ. ՍՍՀ արվեստի վաստ. գործիչներ Բ. Սոկոլովը, Ա. Շուբինը:

**XVIII. Կինոն**

Մ-ում առաջին նկարահանումներն իրականացվել են 1897-ին: 1940—41-ին Քիշնևում գործել է կինոթղթակիցների մշտական կետ, որը 1945-ին վերսկսել է իր գործունեությունը և 1952-ին վերափոխվել փաստավավերագրական ֆիլմերի կինոստուդիայի (1957-ից՝ գեղարվեստական և փաստավավերագրական ֆիլմերի «Մոլդովա-ֆիլմ» կինոստուդիա): Մ-ի կինոյի լավագույն աշխատանքները նվիրված են պատմահեղափոխական, հայրենասիրական թեմաներին և արդի պրոբլեմներին: Կինոնկարներից են «Աշնան վերջին ամիսը» (1965, ռեժ. Վ. Դեբրենյով, «Գրան պրի», 1967, Կանն), «Սերգեյ Լազո» (1967, ռեժ. Ա. Գորդոն), «Լաուտարներ» (1971, ռեժ. Է. Լոտյանու), «Վերջին հայդուկը» (1972, ռեժ. Վ. Գաժիու), «Հարազատ տուն» (1973, ռեժ. Վ. Դյոմին), «Ամրոց» (1978, ռեժ. Վ. Պասկարու, սցենարիստներ՝ Գ. Տեր-Օվանեսով և Վ. Պասկարու), «Ես ուզում եմ երգել» (1979, ռեժ. Վ. Ժերգի): 1962-ին հիմնադրվել է կինեմատոգրաֆիստների միությունը: Տարեկան թողարկվում են 6 լիամետրաժ գեղարվեստական և շուրջ 60 վավերագրական ու գիտա-մասսայական կինոնկարներ: Մ-ում գործում է (1979) 1695 կինոկայանք: Մոլդավ. կինոյի առաջատար վարպետներից են սցենարիստներ և ռեժիսորներ Է. Լոտյանուն, Վ. Գաժիուն, Վ. Իովիցեն, ռեժիսոր Վ. Պասկարուն, օպերատորներ Վ. Չուրյան, Պ. Բալանը, Վ. Կալաշնիկովը, Վ. Ցակովլևը:

**XIX. Հայերը Մոլդավիայում**

Մ-ի տարածքում հայերը հաստատվել են միջնադարում: Ըստ տեղեկությունների (Դ. Դան) նրանք եկել են Ղրիմից: 1401-ին Սուչավայում հիմնվել է հայկ. եպիսկոպոսություն: Հայկ. կենտրոններ են եղել Սորոկին (XVI դ. բերդի պարետ է եղել ազգությամբ հայ Թեոդորոշկո Վարդիկովիչը), Բենդերին (Տիգինա, ուր 1669-ին հիշվում է հայկ. եկեղեցի), Քիշնևը, Կաուշանին (Ղուշա): 1787—91-ի ռուս-թուրքական պատերազմի տարիներին և հետո ռուսահայ թեմի առաջնորդ Հովսեփ արք. Արղությանը օգնել է մեծ թվով հայերի բնակվելու նորահաստատ *Գրիգորիոպոլիս* քաղաքում (ուր 1792-ին արդեն կար երեք հայկ. եկեղեցի): Մ-ի հայերը հիմնականում զբաղվել են արհեստագործությամբ, առևտրով, այգեգործությամբ: Պահպանվել է Քիշնևի իշխանի հրամանագիրը (1749) հայ առևտրականներից մոլդավացիներին հավասար հարկ գանձելու վերաբերյալ: Հայերին ավելի մեծ արտոնություններ շնորհվեցին (ունևոր դասին իրավունք տրվեց պետ. պաշտոններ վարելու, ազնվականական տիտղոսներ կրելու), երբ 1812-ին Բեսարաբիան անցավ Ռուսաստանին: 1858-ի վիճակագրությամբ Բեսարաբիայում ապրում էր 2606 հայ: 1812-ին Քիշնևում (ուր մինչև այժմ կանգուն են 1902—03-ին կառուցված երկու հայկ. եկեղեցի) հաստատվեց Բեսարաբիայի հայոց թեմի հոգևոր առաջնորդությունը (ուներ մեծ կալվածքներ): Առաջին թեմակալ առաջնորդն էր Գրիգոր արք. Զաքարյանը (1812—27): Այնուհետև հոգևոր առաջնորդներ են եղել Ներսես Աշտարակեցին (1828—45), Գաբրիել արք. Այվազյանը (1857—66), Մակար արք. Տեր-Պետրոսյանը (1878—85) և ուրիշներ: Թեմը գոյատևել է մինչև 1918-ը [վերջին առաջնորդը Ներսես արք. Խուդավերդյանն էր (1899—1917)], երբ Բեսարաբիան անցել է Ռումինիային: Մ-ում երևելի հայ գործիչներ էին *Մանուկ բեյ* Միրզայանը [ծավալել է շինարարական լայն գործունեություն, կառուցել Քիշնևի մոտ գտնվող Հնչեշտ (ներկայումս՝ Կոտովսկ) ավանը, նպաստել գյուղատնտեսության զարգացմանը ևն], նրա որդին՝ Օհանես բեյը [1870—72-ին Հնչեշտում կառուցել է եկեղեցի, 1881-ին՝ եռահարկ պալատ (ճարտ. Ա. Բեռնարդացցի)]: 1867-ին Հնչեշտում կար 430 հայ, գործում էր հայկ. դպրոց

Մսեր Մսերյանի ղեկավարությամբ: Այստեղ գործել է նաև Հ. Ալամդարյանը: Խուսափելով ցարական հետապնդումներից՝ 1851—53-ին Քիշնևում է ապրել Մ. Նալբանդյանը, 1888-ին ներկայացումներով հանդես է եկել Պետրոս Ադամյանը: 1915-ի Մեծ եղեռնի օրերին Մ-ի հայաշատ կենտրոնները ստեղծել են հանգանակության կոմիտեներ՝ օգնելու սովյալ հայրենակիցներին: Հայրենական մեծ պատերազմի (1941—45) ժամանակ Մ-ի ազատագրմանը մասնակցել են Ա. Մելքոնյանը և Գ. Հակոբյանը (հետագայում՝ Սովետական Միության հերոսներ):

Ներկայումս (1980) հայերի թիվը Մ-ում շուրջ 500 է: Նրանք ակտիվորեն մասնակցում են հանրապետության գիտության, տնտեսության, մշակույթի և լուսավորության զարգացման գործին: *Մ. Քոլանչյան*

Պատկերազարդումը տես 416—417-րդ էջերի միջև՝ ներդիրներում, աղյուսակներ XV—XVI:

*Գրկ.* Палеогеография Молдавии, Кишинев, 1965; Украина и Молдавия, М., 1972 (Природные условия и естественные ресурсы СССР); История Молдавской ССР, т. 1—2, Кишинев, 1965—68; Революционное движение в 1917 г. и установление Советской власти в Молдавии, Кишинев, 1964; Очерки истории Коммунистической партии Молдавии, 2 изд., Кишинев, 1968; Макеенко М., Специализация Молдавской ССР в общесоюзном разделении труда, Кишинев, 1966; Козуб К., Стукалов Г., Расцвет экономики Молдавской ССР, Кишинев, 1969; Ширшов И., Экономические проблемы развития сельского хозяйства Молдавии, М., 1969; Народное образование в Молдавии за годы Советской власти, Кишинев, 1967; Гросул Я. С., Наука Советской Молдавии, в кн.: Ленин и современная наука, кн. 2, М., 1970; Очерк истории молдавской советской литературы, М., 1963; Захаров А. И., Народная архитектура Молдавии. Каменная архитектура центральных районов, М., 1960; Графика Советской Молдавии, Кишинев, 1963; Прикладное искусство Советской Молдавии, Кишинев, 1963; Искусство Молдавии, [Кишинев], 1965; Колотовкин А. В., Эльтман И. С., Педаш Г. А., Архитектура Советской Молдавии, М., 1973; Тораманян А. Х., К вопросу об армяно-молдавских архитектурных связях, «ՊԲՀ», № 2, 1972; Музыкальная культура Советской Молдавии. Сб. статей, [М., 1965]; Королева Э. А., Хореографическое искусство Молдавии, Кишинев, 1970; Прилепов Д., Молдавский театр, М., 1967; Грошев А., Советское кино в послевоенные годы (1945—1953 гг.), М., 1960.

**ՄՈԼԴԱՎԱՑԻՆԵՐ** (ինքնանվանումը՝ մոլդովեն), ազգ, Մոլդավական ՍՍՀ հիմնական բնակչությունը: Ընդհանուր թիվը ՍՍՀՄ-ում՝ 2.968 հզ. (1979), որից 2.526 հզ. Մոլդավ. ՍՍՀ-ում, 294 հզ. Ուկրաինայում, 102 հզ. ՌՍՖՍՀ-ում, 46 հզ. այլ հանրապետություններում: Խոսում են *մոլդավերեն*: Հավատացյալ Մ. ուղղափառներ են: Մոլդավ. ազգությունը ձևավորվել է Արևելյան Կարպատների նախալեռնային շրջաններում՝ առանձնանալով վոլոխների (վալախների) ընդհանուր զանգվածից: XIV դ. 1-ին կեսին առաջանում է մոլդավ. ֆեոդալական պետությունը: XVI—XIX դդ. Մոլդավիան գտնվում էր Թուրքիայի տիրապետության տակ: 1812-ի Բուխարեստի պայմանագրով Մոլդավիայի՝ Պրուտ և Դնեստր գետերի միջև ընկած հատվածը (Բեսարաբիան), ազատագրվելով թուրք. տիրապետությունից, միացվեց Ռուսաստանին: XX դ. սկզբին ձևավորվեց մոլդավ. ազգը: 1918-ին Բեսարաբիային տիրեց Ռումինիան: 1924-ին Դնեստրի ձախափնյա, Մ-ով բնակված շրջաններում ստեղծվեց Մոլդավ. ԻՍՍՀ (ՌՍՖՍՀ կազմում): 1940-ին Բեսարաբիան վերադարձվեց ՍՍՀՄ-ին, և ստեղծվեց Մոլդավ. ՍՍՀ:

Սովետական իշխանության տարիներին Մ. մեծ հաջողությունների հասան քաղ., տնտ. և մշակութային զարգացման բնագավառներում: Սոցիալիստական շինարարության ընթացքում Մ. ձևավորվեցին որպես սոցիալիստական ազգ: Պատմության, տնտեսության և մշակույթի մասին տես նաև *Մոլդավական Սովետական Սոցիալիստական Հանրապետություն* հոդվածում:

**ՄՈԼԴԱՎԵՐԵՆ**, պատկանում է հնդեվրոպական լեզվաընտանիքի արևելա-ռոմանական լեզուների հյուսիս-դանուբյան խմբին: Խոսվում է Մոլդավ. ՍՍՀ-ում և ՍՍՀՄ մի շարք շրջաններում: Խոսողների թիվը ՍՍՀՄ-ում՝ 2,5 մլն (1979): Տրոհված է 4 բարբառախմբի՝ հս-արմ., հս-արլ., կենտրոնական և հվ-արմ.: Հնչյունական համակարգում առկա են է և ը ձայնավորները, բարձրացող և իջնող երկբարբառներ: Ձևաբանությունը կցական է՝ թեքականության տարրերով: Ունի 4 տեսակ հոդ՝ որոշյալ, անորոշ, դերանվանական, ածականական: Գրական Մ. սկզբնավորվել է XVI—XVII դդ., ձևավորվել XIX դ. 2-րդ կեսին: Գիրը XV—XIX դդ. եղել է *կիրիլիցան*, ապա օգտագործվել է ռուսագիր այբուբեն:

*Գրկ.* Корлэтяну Н. Г., Молдавский язык, в сб.: Языки народов СССР, т. 1, М., 1966.

**ՄՈԼԴՈՎԱ** (Moldova), պատմական մարզ Ռումինիայի արևելքում: Ներկայիս վարչական բաժանումով ընդգրկում է Բակեու, Վասլույ, Վրանչա, Գալաց, Նյամց, Յասսի գավառները, նաև Բոտոշան ու Սուչավա գավառների մի մասը:

Մ-ի տարածքում մարդը բնակվել է հին քարի դարից: Մ. թ. ա. VI դ. բնակություն են հաստատել թրակիական ցեղերը, սկյութները: IV—V դդ. գրավել են հոները, VI—VII դդ. բնակվել են սլավոն. ցեղերը, որոնք նպաստել են ֆեոդալական հարաբերությունների զարգացմանը: X—XII դդ. Մ. ենթարկվել է պեչենեգների և պոլովցիների հարձակումներին, XIII—XIV դդ. 1-ին կեսին գտնվել է *Ոսկե հորդայի* իշխանության տակ, XIV դարից՝ վասալական կախման մեջ Հունգարական թագավորությունից: 1359-ից *Մոլդավական իշխանության* մասն էր: XVI դարից ընկել է թուրք. լծի տակ: XVIII—XIX դդ. ռուս-թուրքական պատերազմներում Թուրքիայի պարտությունների հետևանքով թուլացել է Մ-ի կախվածությունը նրանից: 1774-ի ռուս-թուրքական պայմանագրով (տես *Քյուչուկ-Կայնարջիի հաշտություն 1774*) Ռուսաստանը ստացավ Դանուբյան իշխանությունների (Մ. և Վալաքիա) վրա հովանավորության իրավունք: 1806—12-ի ռուս-թուրքական պատերազմից հետո Մ-ում վերականգնվեց սուլթանի իշխանությունը: 1829-ի Ադրիանուպոլսի հաշտության պայմանագրով Մ-ի ինքնավարությունն ընդլայնվեց: Ղրիմի պատերազմի ընթացքում (1853—56) Մ-ի տարածքը գրավեցին սկզբում ռուսները, ապա՝ ավստր. և թուրք. զորքերը: 1858-ի Փարիզի կոնվենցիայով Մ-ին և Վալախիային տրվեց Մ-ի և Վալախիայի միացյալ իշխանություններ անվանումը: Սակայն իրական միավորումը կայացավ 1859-ին՝ Ա. *Կուզային* Մ-ի և Վալախիայի հոսպոդար ընտրելով: 1862-ի հունվարին ստեղծվեց Ռումինիայի միացյալ իշխանությունը (տես *Ռումինիա*, Պատմական ակնարկը):

Մ-ում բնակվել են հայեր, եղել են կազմակերպված հայ համայնքներ, որոնց մասին տես *Ռումինիա*, Հայերը Ռումինիայում մասը:

**ՄՈԼԴՈՎԿԱ**, գյուղ ՌՍՖՍՀ Կրասնոդարի երկրամասի Սոչիի Ադլերի շրջանում, Մզիմթա գետի աջ կողմում, շրջկենտրոնից հյուսիս-արևելք: Բնակիչները՝ ռուսներ, հայեր, մոլդավացիներ, հույներ, էստոնացիներ: Սովետական տնտեսությունն զբաղվում է բանջարաբոստանային կուլտուրաների մշակությամբ, այգեգործությամբ: Ունի ռուս-հայկական միջնակարգ դպրոց, 2 ակումբ-կինո, գրադարան, մանկամսուր, կապի բաժանմունք, 2 բուժկայան: Մ. հիմնադրել են մոլդավացիները, 1865-ին: Հայերը եկել են Սամսունի և Օրդուի շրջակա գյուղերից, 1910-ին:

**ՄՈԼԵԽԱԶ**, աժիոտաժ (ֆրանս. agiotage), 1. սպեկուլյատիվ տենդ կապիտալիստական բորսաներում և շուկաներում: 2. Փոխաբերական իմաստով՝ ծայրահեղ գրգռվածություն, շահերի բախում որևէ գործի, հարցի շուրջ:

**ՄՈԼԵԿՈՒԼ** (նոր լատ. molecula, < լատ. moles — զանգվածի նվազականը), նյութի փոքրագույն մասնիկ, որը պահպանում է նրա հիմնական քիմիական հատկությունները և կարող է գոյություն ունենալ ինքնուրույն: Մ. քիմ. կապերով միացած ատոմների խումբ է: Քիմ. կապը Մ-ում հիմնականում պայմանավորված է արժեքական էլեկտրոններով: Քվանտամեխանիկական տեսության համաձայն Մ. իրար հետ փոխազդող ատոմական միջուկների և էլեկտրոնների ինքնուրույն համակարգ է: Հայտնի են նաև միատոմանի Մ-ներ (իներտ գազեր, մետաղների գոլորշիներ են):

Մ-ի գաղափարը և անվանումը առաջինն օգտագործել է ֆրանսիացի բնափիլիսոփա Պ. *Գասենդին* (1592—1655): Մ., որպես քիմ. փոխարկումների ենթարկվող և ատոմից տարբերվող նյութի ամենափոքր քանակություն, ձևակերպել է Ա. *Ավոգադրոն* (1811): Մ. հասկացությունը պաշտոնապես գիտության մեջ է մտել ավելի ուշ (Կարլսրուեի միջազգային կոնգրես, 1860): Ֆրանսիացի ֆիզիկոս Ժ. Պերենի *բրոունյան շարժման* ուսումնասիրությունները (1906) դարձան Մ-ի գոյության առաջին փորձնական ապացույցը: Մ-ի կառուցվածքի հիմնական օրինաչափությունները պարզվեցին քիմ. ռեակցիաների հետազոտման, նոր, հատկապես օրգ. միացությունների սինթեզի, անալիզի և ֆիզիկական մեթոդների կիրառման շնորհիվ: Մ-ի հայտնագործումը քիմիայի, որպես գիտության, զարգացման արդյունքն է: Մ-ի կառուցվածքը, հատկությունները և փո-

խարկումների օրինաչափություններն այսօր էլ քիմիայի ուսումնասիրության հիմնական առարկաներն են: Քիմ. ռեակցիան նյութերի Մ-ների փոխարկումն է այլ նյութերի Մ-ների:

Քիմ. ռեակցիաների ընթացքում մի տեսակի Մ-ները փոխարկվում են այլ տեսակի Մ-ների: Տարբեր նյութերի Մ-ները տարբերվում են որակական և քանակական բաղադրությամբ, զանգվածով, կառուցվածքով, ատոմների փոխադարձ դասավորությամբ, ատոմների միջև քիմ. կապի բնույթով և հատկություններով: Մ-ի զանգվածը սովորաբար $10^{-24}$ *գ*-ի կարգի մեծություն է, իսկ չափերը մի քանի (կամ տասնյակ) Å: Բնության մեջ, սակայն, տարածված են նյութեր (կաուչուկ, թաղանթանյութ, սպիտակուցներ), որոնց Մ-ները շատ ավելի մեծ են (բաղկացած են հազարավոր, անգամ միլիոնավոր ատոմներից, և որոնց զանգվածը հասնում է $10^{-20}$—$10^{-16}$ *գ*-ի): Այդպիսի Մ-ները կոչվում են մակրոմոլեկուլներ: Նյութը բնորոշող կարևոր մեծություն է *մոլեկուլային կանգվածը*, որի արժեքը տարբեր նյութերի համար միավորներից հասնում է տասնյակ, երբեմն հարյուրավոր միլիոնների: Մ., որի բացասական և դրական լիցքերի «ծանրության կենտրոնները» չեն համընկնում, բևեռացված է և ունի սեփական *դիպոլային մոմենտ*: Էլեկտրական դաշտում Մ-ները բևեռացվում են և ձեռք են բերում մակածված դիպոլային մոմենտ: Մ-ները բևեռացվում են նաև լույսի փոփոխական էլեկտրական դաշտում: Դրանով է պայմանավորված լույսի բեկումը, կլանումը, նյութի *օպտիկական ակտիվությունը*: Նյութերի մեծամասնության Մ-ները դիամագնիսական են: Պարամագնիսական են միայն չզույգված էլեկտրոններ պարունակող Մ-ները (տես *Դիամագնիսականություն*, *Պարամագնիսականություն*): Մ-ի բևեռացվելու ունակությունը և նյութի *մագնիսական ընկալունակությունը* պայմանավորված են արժեքական էլեկտրոնների բնույթով: Մոլեկուլային սպեկտրները պարունակում են ուղղակի տեղեկություններ Մ-ի վիճակների և նրանց միջև հավանական անցումների մասին և օգտագործվում են Մ-ները ուսումնասիրելու համար (տես *Էլեկտրոնային պարամագնիսական ռեզոնանս*, *Միջուկային մագնիսական ռեզոնանս*):

Ըստ նյութի ատոմամոլեկուլային դասական ուսմունքի, բոլոր նյութերը բաղկացած են Մ-ներից, որոնք փոխազդում են իրար հետ և գտնվում անընդհատ շարժման մեջ: Գազերում Մ-ների փոխազդեցությունը թույլ է, շարժումը՝ բրոունյան, պինդ նյութերում՝ փոխազդեցությունը ուժեղ է, շարժումը՝ տատանողական: Գազերում Մ-ները ինքնուրույն են, պինդ նյութերում՝ պահպանում են կամ կորցնում ինքնուրույնությունը: Նյութերի մեծ մասը հեղուկ վիճակում բաղկացած է Մ-ներից: Կոնդենսված համակարգերում (հեղուկ, պինդ) Մ-ները պահպանում են իրենց գոյությունը, եթե միջմոլեկուլային փոխազդեցությունները հաղթահարելու համար անհրաժեշտ էներգիան շատ ավելի փոքր է, քան ատոմների միջև քիմ. կապի էներգիան: Բազմաթիվ օրգ. և որոշ անօրգանական նյութեր (շաքար, ծծումբ ևն) առաջացնում են մոլեկուլային բյուրեղներ, որոնց բյուրեղական ցանցի հանգույցներում գտնվում են իրար հետ թույլ փոխազդող Մ-ները: Իոնական և ատոմական բյուրեղներում առանձին Մ-ներ չկան, ամբողջ բյուրեղը փաստորեն մի հսկայական Մ. է: Նյութի մոլեկուլային կամ քիմ. բանաձևը, որը որոշվում է նյութում պարունակվող քիմ. տարրերի ատոմական հարաբերությունների (ստացվում են քիմ. վերլուծությամբ) և մոլեկուլային զանգվածի միջոցով, մոլեկուլային կառուցվածք ունեցող նյութերի դեպքում արտահայտում է Մ-ի իրական բաղադրությունը: Մյուս դեպքերում քիմ. բանաձևը ցույց է տալիս միայն տարրերի հարաբերական պարունակությունը նյութում: Նյութի *քիմիական կառուցվածքի տեսության* ստեղծումը (Ա. Մ. *Բուտլերով*, Ֆ. Ա. *Կեկուլե* և ուրիշներ) հնարավոր դարձրեց Մ. պատկերել գրաֆիկական բանաձևի միջոցով, որը բաղադրությունից բացի ցույց է տալիս նաև քիմ. կապերի հաջորդականությունը Մ-ում: Պարզվեց, որ տարբեր կառուցվածք, տարբեր հատկություն ունեցող Մ-ները կարող են ունենալ միևնույն բաղադրությունը (տես *Իզոմերիա*): Ատոմների փոխազդեցության էներգիան Մ-ում կախված է նրանց միջուկների հեռավորությունից՝ չափազանց մեծ հեռավորությունների դեպքում այդ էներգիան զրո է: Եթե ատոմները մոտեցնելիս նրանց միջև առաջանում է քիմ. կապ, ապա Մ-ի պոտենցիալ էներգիան խիստ փոքրանում է (տես նկ. 1): Միջուկների հետագա մոտեցումը բերում է էլեկտրաստատիկական վանման, և էներգիան նորից աճում է: Սովորաբար Մ-ի էներգիան նրա մեջ եղած քիմ. կապերի էներգիաների գումարն է. Քիմ. կապը Մ ում պայմանավորված է տեղայնացված էլեկտրոններով: Զուգորդված կապեր պարունակող Մ-ներում π-կապեր առաջացնող էլեկտրոնները, սակայն, տեղայնացված չեն: Քիմ. կապի ժամանակակից տեսությունը հաշվի է առնում նաև δ-կապերի մասնակի ապատեղայնացման հնարավորությունը. Կայուն Մ-ներում էլեկտրոնների գումարային սպինը զրո է: Կենտ էլեկտրոններ պարունակող Մ ները սովորաբար կայուն չեն (տես *Ազատ ռադիկալներ*): Յուրաքանչյուր ատոմին տվյալ արժեքական վիճակում կարելի է վերագրել որոշակի կովալենտային կամ *ատոմական շառավիղ* (իոնական կապի դեպքում՝ *իոնական շառավիղ*), որը բնորոշում է ատոմի (իոնի) էլեկտրոնային թաղանթի չափերը Մ-ում: Մ-ի չափերը (որոնք պայմանավորված են նրա մեջ մտնող ատոմների չափերով, քանակով և փոխադարձ դասավորությամբ) ըստ քվանտային մեխանիկայի, խիստ որոշակի չեն: Մ-ների չափերը և տարածական կառուցվածքը գործնականում որոշում են ռենտգենյան եղանակներով: Այդ հնարավոր է անգամ շատ բարդ Մ-ի (օրինակ՝ սպիտակուցի) համար: Մ-ի մեծության կարգը կարելի է գնահատել գազի ջերմահաղորդականության, դիֆուզիայի, մածուցիկության գործակիցների և կոնդենսված վիճակում նյութի խտության միջոցով: Ոչ բարդ Մ-ների մոդելները (նկ. 2) կարելի է կառուցել նաև, եթե հայտնի են ատոմների ատոմական (իոնական) և վան-դեր-վաալսյան շառավիղները (այն ցույց է տալիս, թե որքան կարող են մոտենալ քիմ. կապերով չմիացած ատոմները) և քիմ. կապերի բնույթը հիբրիդացված ատոմական օրբիտալներով պայմանավորված անկյունների և նրանց միջև (տես *Արժեքականություն*): Քանի որ պարզ՝ δ-կապով կապված ատոմական խմբերը կարող են պտտվել այդ կապի շուրջը, ապա Մ. կարող է կրել կոնֆորմացիոն փոփոխություններ: Գերմանացի ֆիզիկոսներ Վ. Հայտլերի և Ֆ. Լոնդոնի (1927) ստեղծած ($H_2$ Մ-ի համար) քիմ. կապի տեսության զարգացումը, մոլեկուլային օրբիտալների եղանակի, քվանտային քիմիայի և էլեկտրոնային հաշվիչ մեքենաների կիրառումը հնարավոր դարձրեց հաշվել քիմ. կապերի և Մ-ի էներգիաները, միջատոմական հեռավորությունները և էլեկտրոնային խտության բաշխումը բարդ Մ-ներում: Մ-ի կառուցվածքով և հատկություններով պայմանավորված ֆիզիկական երևույթներն ուսումնասիրում է *մոլեկուլային ֆիզիկան*, իսկ կենսբ. երևույթները՝ *մոլեկուլային կենսաբանությունը*:



Նկ. 1. երկատոմ մոլեկուլի պոտենցիալ էներգիայի (U) կախումը ատոմների միջուկների հեռավորությունից (P): De-ն մոլեկուլի դիսոցման էներգիան է, D-ն՝ սպեկտրոսկոպային եղանակով որոշվող էներգիան



Նկ. 2. մի քանի պարզ մոլեկուլների կառուցվածքի մոդելները

Գրկ. Волькенштейн М В , Строение и физические свойства молекул, М.—Л., 1955; Նույնի, Молекулы и жизнь, М., 1965; Слэтер Дж., Электронная структура молекул, пер. с англ., М., 1965.

*Լ. Գրիգորյան, Ա. Մուշեղյան*

**ՄՈԼԵԿՈՒԼԱՅԻՆ ԳԵՆԵՏԻԿԱ**, *մոլեկուլային կենսաբանության* և *գենետիկայի* բաժին. ուսումնասիրում է օրգանիզմի ժառանգականության և փոփոխականության նյութական հիմքերը, ինչպես նաև գենետիկական ինֆորմացիայի պահպանման, փոխանցման, փոփոխման և իրականացման մոլեկուլային մեխանիզմները: Որ-

պես ինքնուրույն ուղղություն առանձնացվել է XX դ. 40—50-ական թթ., երբ կենսաբանության մեջ ֆիզիկական և քիմ. նորագույն մեթոդների (ռենտգենակառուցվածքային վերլուծություն, քրոմատոգրաֆիա, էլեկտրոնային միկրոսկոպիա, էլեկտրաֆորեզ, ռադիոակտիվ իզոտոպներ ևն) կիրառումը հնարավոր դարձրեց ավելի խորը և ճշգրիտ ուսումնասիրել բջջի և նրա առանձին բաղադրամասերի ֆունկցիան ու կառուցվածքը: Պարզ կառուցվածքի և կարճ ժամանակամիջոցում մեծ սերունդ տալու շնորհիվ պրոկարիոտները, բազմաթիվ բակտերիաներ և միկրոօրգանիզմներ, վիրուսներ դարձան Մ. գ-ի ուսումնասիրության հիմնական օբյեկտները: Մ. գ-ի կարևորագույն նվաճումներից է *գենի* քիմ. բնույթի պարզաբանումը (1953) և օրգանիզմում ժառանգական ինֆորմացիայի գրանցման եղանակների ու իրականացման վերծանումը: 1944-ին ամերիկացի գիտնական Օ. Էյվերին, աշխատակիցների հետ ցույց տվեց, որ պնևմոկոկերի մեկ շտամի ժառանգական հատկանիշները կարող են փոխանցվել մյուսին՝ վերջինիս մեջ առաջին շտամից անջատված ԴՆԹ ներարկելով: ԴՆԹ-ով նման գենետիկական տրանսֆորմացիա իրականացվեց նաև այլ բակտերիաների համար: Այսպիսով, պարզվեց, որ գեները կազմված են ԴՆԹ-ից: Փորձեր են կատարվել նաև ԴՆԹ-ի փոխարեն ՌՆԹ պարունակող վիրուսների վրա և պարզվել է, որ վերջիններիս գեները կազմված են ՌՆԹ-ից: Հետագայում պարզվեց, որ ԴՆԹ պարունակող վիրուսների բազմացման համար անհրաժեշտ և բավարար է ԴՆԹ-ի ներարկումը տվյալ բջջի մեջ, իսկ վիրուսի մյուս բաղադրամասերը՝ սպիտակուցները, լիպիդները ևն, զուրկ են ինֆորմացիոն հատկությունից և գենետիկորեն իներտ են: 1953-ին ամերիկացի Ջ. Ուոթսոնը և անգլ. Ֆ. Քրիքը առաջարկեցին ԴՆԹ-ի կառուցվածքի մոդելը, ըստ որի ԴՆԹ-ի մոլեկուլը բաղկացած է ոչ պարբերական, բայց որոշակի հերթականությամբ դասավորված *նուկլեոտիդներից* և կոմպլեմենտարության սկզբունքով իրար միացած 2 բազմանուկլեոտիդային թելիկների պարույր է: Ավելի ուշ պարզվեց, որ նույնատիպ կառուցվածք ունեն տարբեր ՌՆԹ-ների մոլեկուլները, որոնք սակայն բաղկացած են բազմանուկլեոտիդային մեկ թելիկից: Ի հակադրություն դասական պատկերացումների, ըստ որոնց, գենը ժառանգականության ընդհատ և անբաժանելի միավոր էր, 1950—60-ին պարզվեց գենի բաժանելիությունը: Գենը բաղկացած է տասնյակ կամ հարյուրավոր մասերից, որոնք կարող են առանձին մուտացվել կամ վերամիավորվել: Գենի բաժանելիության սահմանը նուկլեոտիդների զույգն է (մեկ թելիկավոր ՌՆԹ պարունակող վիրուսների համար՝ մեկ նուկլեոտիդը): Գենի բնույթի և կառուցվածքի մասին տվյալները հնարավոր դարձրին գենի անջատումը (Ջ. Բեքվիթ, 1969) և քիմ. սինթեզը (Հ. Քորանա, 1968): ԴՆԹ-ի կառուցվածքի բացահայտումից հետո հնարավորություն ստեղծվեց փորձնական ճանապարհով հետազոտել գենետիկական ինֆորմացիայի բջջից բջիջ և սերնդից սերունդ հաղորդման հիմքում ընկած պրոցեսի՝ ԴՆԹ-ի կենսասինթեզի՝ ռեպլիկացիայի մեխանիզմը: Պարզվեց, որ ԴՆԹ-ի կենսասինթեզի համար անհրաժեշտ է ունենալ ԴՆԹ-ի պատրաստի մոլեկուլ, որի հիմքի (մատրից) վրա սինթեզվում է նորը: Ընդ որում ԴՆԹ-ի պարույրը ռեպլիկացիայի ընթացքում ապազալարվում է, և յուրաքանչյուր բազմանուկլեոտիդային թելիկի վրա սինթեզվում է նոր, նրան կոմպլեմենտար թելիկ: Այսինքն, դուստր ԴՆԹ մոլեկուլները կազմված են մեկ հին և մեկ նոր թելիկներից: Մ. գ-ի խոշոր նվաճումներից էր գենետիկական ինֆորմացիայի իրականացման խնդրի պարզաբանումը: Այսինքն, ինչպես են գեները՝ ԴՆԹ-ի մոլեկուլի հատվածները, որոշում տվյալ օրգանիզմի հատուկ սպիտակուցի կառուցվածքն ու հատկությունները: ԴՆԹ-ի և սպիտակուցի մոլեկուլների համեմատությունը բերեց գենետիկական կոդի (տես *Կոդ գենետիկական*) գաղափարին, ըստ որի ԴՆԹ-ի մոլեկուլում 4 տեսակի նուկլեոտիդների հաջորդականությունն է որոշում սպիտակուցի մոլեկուլում 20 տեսակի ամինաթթուների հաջորդականությունը: ԴՆԹ-ի շղթայում յուրաքանչյուր եռյակ (տրիպլետ, կոդոն) որոշում է (կոդավորում) որոշակի ամինաթթու: Հաստատվեց նաև գենետիկական կոդի ունիվերսալությունը կենդանի օրգանիզմների համար: Գենետիկական կոդի վերծանումը թույլ տվեց պարզել նաև սպիտակուցի սինթեզի մեխանիզմը: Պարզվեց, որ գենետիկական ինֆորմացիայի հաղորդումը կատարվում է ԴՆԹ—ՌՆԹ-սպիտակուց սխեմայով: Մ. գ-ի կարևոր նվաճումներից է նաև սպիտակուցների սինթեզի կ ա ր գ ա վ ո ր մ ա ն մեխանիզմի բացահայտումը: Պարզված է, որ բակտերիայի բջջում սպիտակուցի կենսասինթեզը գտնվում է գենետիկական կրկնակի հսկման տակ: Մի կողմից յուրաքանչյուր սպիտակուցի մոլեկուլային կառուցվածքը որոշվում է համապատասխան կառուցվածքային գենով, մյուս կողմից, այդ սպիտակուցի սինթեզի հնարավորությունը որոշվում է առանձին կարգավորիչ գենով, որը կոդավորում է հատուկ կարգավորիչ սպիտակուցը՝ օպերատորը: Վերջինս միանում է ԴՆԹ-ի առանձին հատվածների հետ և «միացնում» կամ «անջատում» է կառուցվածքային գեների ֆունկցիաները: Մի քանի կառուցվածքային գեների և իրենց օպերատորի համակարգը կոչվում է օ պ ե ր ո ն: Բազմաթիվ օրգանիզմներում սպիտակուցի սինթեզի կարգավորման մեխանիզմը բարդ է և բավարար չափով ուսումնասիրված չէ:

Մ. գ-ի զարգացմամբ հնարավոր եղավ նաև խոր կերպով հասկանալ *մուտացիաների*, ռ ե պ ա ր ա ց ի ա յ ի (ԴՆԹ-ի մոլեկուլի վնասված՝ մուտացված մասերի վերականգնում) էությունը:

Մ. գ-ի նվաճումների շնորհիվ զարգանում է, այսպես կոչված, գ ե ն ա յ ի ն ի ն ժ ե ն ե ր ի ա ն, որն այժմ հնարավորություններ ունի միկրոօրգանիզմների մեջ մտցնել այլ օրգանիզմների (նաև մարդու) գեներ և այդ եղանակով նրանց ստիպել սինթեզել իրենց ոչ յուրահատուկ միացություններ: Ներկայումս հայտնի են ինսուլին և ինտերֆերոն սինթեզող բակտերիալ շտամներ: Մ. գ-ի տվյալներն օգտագործվում են նաև մուտացիոն պրոցեսների, օրգանիզմների զարգացման կառավարման համար, ինչպես նաև լեյկոզների, չարորակ նորագոյացությունների, վիրուսային վարակների կանխարգելման և բուժման համար օգտագործվող դեղորայքի պատրաստման մեջ: Մ. գ. իր հայտնագործություններով նշանակալի ազդեցություն ունեցավ կենսաբ. բոլոր գիտությունների վրա: Այն արագացրեց կենսաքիմիայի, կենսաֆիզիկայի, բջջաբանության, մանրէաբանության առաջընթացը, նրա հիմքի վրա աճեց ու ձևավորվեց մոլեկուլային կենսաբանությունը: Մ. գ-ի նվաճումները լայնորեն օգտագործվում են ընդհանուր կենսաբանության, գյուղատնտ. և բժշկագիտության մեջ: ՀՍՍՀ-ում Մ. գ-ով զբաղվում են գենետիկայի ՀԳՀԻ-ի Երևանի ֆիլիալում, Երևանի համալսարանի գենետիկայի և բջջաբանության ամբիոնում, ՀՍՍՀ ԳԱ փորձառական կենսաբանության ինստ-ում:

*Գրկ.* Молекулярная генетика, Сб. ст., пер с англ., ч. 1, 1964; Stent G. S., Molecular Genetics, San Francisco, 1971.

**ՄՈԼԵԿՈՒԼԱՅԻՆ ԳԵՆԵՐԱՏՈՐ**, սարք, որում կոհերենտ էլեկտրամագնիսական տատանումներն առաջանում են շնորհիվ մոլեկուլների ստիպողական քվանտային անցումների՝ սկզբնական էներգետիկ վիճակից ավելի փոքր ներքին էներգիայով վիճակի (տես *Կոհերենտություն*, *Քվանտային էլեկտրոնիկա*): Մ. գ. առաջին քվանտային գեներատորն է, որը 1954-ին ստեղծել են Ն. Գ. *Բասովը* ու Ա. Մ. *Պրոխորովը* (ՍՍՀՄ) և նրանցից անկախ՝ Չ. *Թաունսը*, Ջ. Գորդոնը և Հ. Ցեյգերը (ԱՄՆ): Մ. գ-ներն ունեն հաճախականության մեծ կայունություն, ճառագայթման լավ ուղղորդվածություն ու մեներանգություն և օգտագործվում են իբրև հաճախականության, ժամանակի չափանմուշ ևն: Առավել տարածված է ամոնիակի $NH_3$ մոլեկուլներով աշխատող Մ. գ., որի առաքած ալիքի երկարությունը՝ $\lambda = 1,27$ *սմ*, հզորությունը $10^{-8}$ *վտ* է, իսկ հաճախականության կայունությունն ընկած է $10^{-7}$—$10^{-11}$ սահմաններում: Կոհերենտ տատանումների առաջացման համար անհրաժեշտ է 2 պայման. սարքի աշխատանքային ծավալում մասնիկների թիվն սկզբնական վիճակում պետք է ավելի մեծ լինի, քան փոքր ներքին էներգիայով վիճակում (բնակեցվածության ինվերսիա՝ շրջվածություն) և, բացի այդ, պետք է կապ ապահովվի ժամանակի տարբեր պահերին ճառագայթող մասնիկների միջև (դրական հակադարձ կապ): Էներգիայի մակարդակների շրջված բնակեցվածությամբ մոլեկուլներն առանձնացվում են էլեկտրաստատիկ տեսակավորող հարմարանքի միջոցով, որը քառաբևեռ էլեկտրաստատիկ կոնդենսատոր է (նկ.): Անցնելով այդ կոնդենսատորի խիստ անհամասեռ էլեկտրական դաշտով՝ բարձր էներգետիկ վիճակում գտնվող մոլեկուլները շեղվում են դեպի կոնդենսատորի առանցքը (տես *Շտարկի երևույթ*) և նեղ անցքով ընկնում *ծավալային ռեզոնատորի* մեջ, որի սեփական հա-

ճախականությունը համընկնում է ավելի ցածր էներգետիկ վիճակի անցման հաճախականությանը: Ստիպողական ճառագայթման շնորհիվ ռեզոնատորում ստեղծվում է դրական հակադարձ կապ, և առաջվում են կոհերենտ էլեկտրամագնիսական ալիքներ:




Մոլեկուլային գեներատորի սխեմատիկ պատկերումը (ա), քառաբևեռ կոնդենսատորի ընդհանուր տեսքը (բ), քառաբևեռ գեներատորի ձողերի կտրվածքը (գ)

Ստեղծվել են նաև դիպոլային այլ մոլեկուլներով սանտիմետրային և միլիմետրային ալիքների տիրույթում աշխատող Մ. գ-ներ, ինչպես և ջրածնի ատոմների փնջով $\lambda=21$ *սմ* ալիքով աշխատող քվանտային գեներատորներ: Այս սարքերը և ռադիոտիրույթի *քվանտային ուժեղացուցիչները* երբեմն կոչվում են *մազեր*: Գոյություն ունեն Մ. գ-ի մի քանի կառուցվածքային տարբերակներ, որոնք տարբերվում են տեսակավորող համակարգով, ռեզոնատորների քանակով ևն: Մ. գ-ների դասին են պատկանում նաև այն քվանտային գեներատորները, որոնցում մոլեկուլների մակարդակների բնակեցվածության ինվերսիան ձեռք է բերվում ոչ թե տեսակավորմամբ, այլ ուրիշ եղանակներով, օրինակ, օժանդակ էլեկտրամագնիսական դաշտի ազդեցությամբ (մղում), էլեկտրական պարպումով ևն: Այս առումով Մ. գ-ների շարքը կարելի է դասել օպտիկական տիրույթի քվանտային գեներատորները՝ *լազերները*, որոնցում աշխատանքային նյութը մոլեկուլային գազերն են:

*Գրկ.* Ораевский А. Н., Молекулярные генераторы, М., 1964. *Վ. Պապանյան*

**ՄՈԼԵԿՈՒԼԱՅԻՆ ԵՎ ԱՏՈՄԱՅԻՆ ՓՆՋԵՐ**, վակուումում շարժվող և գործնականում միմյանց ու մնացորդային գազերի մոլեկուլների հետ չբախվող մոլեկուլների կամ ատոմների հոսքեր: Մ. և ա. փ. հնարավորություն են տալիս ուսումնասիրել առանձին մասնիկների հատկությունները՝ անտեսնելով բախումներով պայմանավորված երևույթները, բացի այն դեպքերից, երբ բախումներն իրենք հետազոտության առարկա են դառնում: Ատոմային փնջով փորձը 1911-ին կատարել է ֆրանս. գիտնական Լ. Դյունուայեն՝ ցուցադրելով Na-ի ատոմների ուղղագիծ թռիչքը վակուումում: Այնուհետև այդ փորձերը շարունակել է *Օ. Շտեռնը* իր աշխատակիցների հետ (1929): Նրանք Մ. և ա. փ. օգտագործել են մոլեկուլների արագությունը և միմյանց հետ ունեցած բախումների էֆեկտիվ կտրվածքները չափելու, ինչպես նաև էլեկտրոնների սպիններով և միջուկների մագնիսական մոմենտներով պայմանավորված երևույթները հետազոտելու համար: 1937-ին Ի. *Ռաբին* Մ. և ա. փ. օգտագործել է իր մշակած ռեզոնանսային մեթոդի համար, որը հետագայում դարձել է *ռադիոսպեկտրոսկոպիայի* հիմնական մեթոդը: Դրանով մեծ ճշտությամբ չափում են մոլեկուլների, ատոմների և միջուկների հիմնական բնութագրերը (Ն. Ռամզեյ և ուրիշներ): Մ. և ա. փ-ի աղբյուրում գազի ճնշումը պետք է բավականաչափ փոքր լինի, որպեսզի բախումները մասնիկների միջև հազվադեպ լինեն, և դրանց ազատ վազքի երկարությունը մեծ լինի: Մ. և ա. փ. կիրառվում են նաև քվանտային էլեկտրոնիկայում, արագացուցիչային տեխնիկայում:

**ՄՈԼԵԿՈՒԼԱՅԻՆ ԶԱՆԳՎԱԾ**, *մոլեկուլը* բնորոշող մեծություն, որը ցույց է տալիս, թե նրա զանգվածը քանի անգամ է տարբերվում *զանգվածի ատոմական միավորից*: Ըստ ժամանակակից մոտեցման Մ. զ. (նաև ատոմական զանգվածը) չափողականություն չունեցող մեծություն է: Սակայն Մ. զ. տերմինը դեռևս լայնորեն օգտագործվում է իր նախկին իմաստով՝ «Մ. զ. մոլեկուլի զանգվածն է՝ արտահայտված զանգվածի ատոմական միավորներով (ածխածնային միավորներով)»: Այդ դեպքում հարկ է լինում բաց թողնել նրա չափողականությունը:

Մ. զ. որոշակիորեն սահմանվեց Ս. Կանիցարոյի աշխատանքների (1858) շնորհիվ, որոնք հիմնված էին Ա. *Ավոգադրոյի*՝ մինչ այդ ճանաչում չգտած տեսակետի (1811) վրա: Մ. զ. պաշտոնապես գիտության մեջ մտավ մոլեկուլ հասկացության հետ միաժամանակ [Կարլսրուեի միջազգային կոնգրես (1880)]: *Իզոտոպների* հայտնաբերումը (Ֆ. Սոդդի) և զանգվածային սպեկտրաչափության եղանակի մշակումը (Ֆ. *Աստոն*, մասսպեկտրոսկոպիա) ճշգրտեցին Մ. զ-ի մեր պատկերացումները:

Մ. զ. հավասար է մոլեկուլում գտնվող ատոմների ատոմական զանգվածների գումարին: Նյութի Մ. զ., սովորաբար, նրա տարբեր իզոտոպային բաղադրությունն ունեցող մոլեկուլների Մ. զ-ների միջինացված արժեքն է: Մ. զ. նյութը բնորոշող կարևոր մեծություն է՝ գաղափար է տալիս մոլեկուլի մեծության, բաղադրության, էներգիայի և հատկությունների մասին: Այն օգտագործվում է գործնական ու տեսական նշանակության բազմաթիվ հաշվումներում: Նյութի տարբեր հատկությունների կապն արտահայտող բանաձևերը սովորաբար պարունակում են նրա Մ. զ-ի արժեքը: Մ. զ-ի միջոցով հաշվում են գազի խտությունը, լուծույթի մոլյար կոնցենտրացիան, որոշում միացության քիմ. բանաձևը ևն: Մոլեկուլի զանգվածը գրամներով արտահայտելու համար նրա Մ. զ. բազմապատկում են զանգվածի ատոմական միավորի արժեքով՝ $(1{,}66043\pm\pm0{,}00031)\cdot10^{-24}$ *գ*: Մ. զ. հասկացությունը անքակտելիորեն կապված է մոլեկուլի սահմանման հետ, բայց կիրառելի է ոչ միայն առանձին մոլեկուլներից բաղկացած նյութերի (գազեր, գոլորշիներ, մոլեկուլային բյուրեղներ, հեղուկներ, լուծույթներ), այլև ամեն մի նյութի համար: Երբեմն այն կիրառում են նաև հայտնի բաղադրության խառնուրդների համար: Օրինակ, օդի միջին Մ. զ. 29 է: Մ. զ. կարևոր մեծություն է նաև բարձրամոլեկուլային նյութերի՝ *պոլիմերների*, սպիտակուցների, նուկլեինաթթուների համար: Պոլիմերների ֆիզիկամեխանիկական հատկությունները հիմնականում պայմանավորված են նրանց Մ. զ-ների արժեքով: Քանի որ պոլիմերները բաղկացած են տարբեր մեծության *մակրոմոլեկուլներից*, ապա նրանց Մ. զ-ները միջինացված մեծություններ են: Պոլիմերի մոլեկուլների իրական մեծության մասին ճշգրիտ պատկերացում է տալիս Մ. զ-ների բաշխման ֆունկցիան: Տարբեր նյութերի Մ. զ-ները տարբերվում են իրարից (կան բացառություններ): Հայտնի են շատ փոքր և չափազանց մեծ Մ. զ. ունեցող նյութեր, օրինակ, ջրածնի Մ. զ. 2,01594 է, ինսուլին հորմոնինը՝ մոտ 6000, սպիտակուցներինը և նուկլեինաթթուներինը՝ մի քանի միլիոն, երբեմն՝ միլիարդներ: Նյութերի Մ. զ. որոշում են փորձնական եղանակներով, չափում են Մ. զ-ից կախված որևէ ֆիզիկական հատկություն: Առավել լավ են մշակված գազերի, գոլորշիների և լուծույթում գտնվող նյութերի Մ. զ-ների որոշման եղանակները: Գազերի և գոլորշիների Մ. զ-ները որոշում են Ավոգադրոյի օրենքի միջոցով, իսկ լուծույթում չդիսոցվող նյութերինը՝ լուծույթի հալման կամ եռման կետը չափելով (տես *Կրիոսկոպիա*, *Էբուլիոսկոպիա*) կամ լուսացրման եղանակով: Առանձին մոլեկուլների զանգվածները որոշում են զանգվածային սպեկտրաչափության եղանակով (Տես *Մաս-սպեկտրոսկոպիա*).

*Ա. Մուշեղյան*

**ՄՈԼԵԿՈՒԼԱՅԻՆ ԿԱՊ**, տես *Քիմիական կապ*:

**ՄՈԼԵԿՈՒԼԱՅԻՆ ԿԵՆՍԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ**, կյանքի հիմնական դրսևորումները մոլեկուլային մակարդակով ուսումնասիրող գիտություն: Ձևավորվել է XX դ. կեսերին: Մ. կ-յան խնդիրը այդ երևույթների բնույթի ճանաչումն է, կյանքի բնորոշ արտահայտությունների (ժառանգականություն, ինքնավերարտադրություն, սպիտակուցների կենսասինթեզ, էներգիայի փոխարկումներ, աճ, զարգացում, շարժունակություն ևն), կենսաբանական նյութերի (հիմնականում *կենսապոլիմերների*՝ *սպիտակուցների* և *նուկլեինաթթուների*) մոլեկուլների կառուցվածքով, հատկություններով ու փոխազդեցություններով պայմանավորված լինելու բացահայտումը: Մ. կ-յան ուսումնասիրության օբյեկտներն են բջջի առանձին օրգանոիդները (բջջի կորիզ, միտոքոնդրիաներ, ռիբոսոմներ), քրոմոսոմները, բջջաթաղանթները, ինչպես նաև վիրուսները, բակտերիաֆագերը և կենդանի մատերիայի կարևորագույն բաղադրիչների՝ նուկլեինաթթուների ու սպիտակուցների մոլեկուլները: Մ. կ. սերտորեն կապված է կենսաքիմիայի, կենսաֆիզիկայի, կենսաօրգանական քիմիայի, գենետիկայի, ֆիզիոլոգիայի և *մոլեկուլային գենետիկայի* հետ և որպես բնագիտության նոր ճյուղ ունի ուսումնասիրության իր խնդիրներն ու առանձնահատկությունները: Մ. կ-յան էությունը, ըստ Մ. Պերուցի, կենսաբանական ֆունկցիաների մեկնաբանումն է մոլեկուլային

կառուցվածքի տեսանկյունից: Ընդ որում, Մ. կ-յան ուշադրության կենտրոնում են ոչ թե գլխավոր վալենտական կապերով պայմանավորված քիմ. ձևափոխությունները, այլ էլեկտրաստատիկական, վան-դեր-վաալսյան, ջրածնային ևն կապերով պայմանավորված ատոմների ու դրանց խմբերի փոխադարձ դասավորությունը և միջմոլեկուլային փոխազդեցությունները: Այսինքն կարևոր է կենսապոլիմերի մոլեկուլի խիստ որոշակի ծավալային կառուցվածքի առաջացումը, որի դեպքում միայն մոլեկուլը կարող է ծառայել որպես կենսաբանական ֆունկցիաների նյութական հիմք: «Մ. կ.» տերմինն առաջին անգամ օգտագործել է անգլ. գիտնական Ու. Աստբերին, թելիկային սպիտակուցների (կոլագեն, արյան ֆիբրին ևն) մոլեկուլային կառուցվածքի և ֆիզիկական ու կենսաբանական հատկությունների կապը բացահայտող ուսումնասիրությունների վերաբերյալ: Մ. կ-յան, որպես ձևավորված գիտության, առաջացումն ընդունված է համարել 1953-ը, երբ Ջ. Ուոտսոնը և Ֆ. Քրիքը պարզեցին դեզօքսիռիբոնուկլեինաթթվի (ԴՆԹ) եռաչափ կառուցվածքը: 1957-ին պարզվեց *միոգլոբինի* (Ջ. Քենդրյու), ապա *հեմոգլոբինի* (Մ. Պերուց) եռաչափ կառուցվածքը: Ձևավորվեցին մակրոմոլեկուլների տարածական կառուցվածքի տարբեր մակարդակների (առաջնային, երկրորդային, երրորդային և չորրորդային) մասին պատկերացումները: Հայտնի դարձավ, որ կենսապոլիմերների կենսաբանական ֆունկցիաները պայմանավորված են դրանց տարածական կառուցվածքով և հնարավոր դարձավ այդ կապի ուսումնասիրությունը: Ժամանակակից Մ. կ. կյանքի երևույթների ամբողջությունը դիտում է որպես մատերիայի, էներգիայի և ինֆորմացիայի հոսքերի զուգակցման արդյունք: Մատերիայի հոսքըն արտահայտվում է նյութափոխանակության երևույթներում, էներգիայի հոսքը կյանքի բոլոր արտահայտությունների շարժիչ ուժն է, ինֆորմացիայի հոսքն արտահայտվում է յուրաքանչյուր օրգանիզմի զարգացման և գոյության բազմազան պրոցեսներում, ինչպես նաև իրար հաջորդող սերունդների հերթափոխում: Ինֆորմացիայի հոսքի պատկերացումը Մ. կ-յան բնորոշ առանձնահատկությունն է: Մ. կ-յան նվաճումներից են ԴՆԹ-ի և բոլոր տիպերի ՌՆԹ-ների, ռիբոսոմների, վիրուսների կառուցվածքի բացահայտումը, հակադարձ տրանսկրիպցիայի երևույթի (ԴՆԹ-ի սինթեզը ՌՆԹ-ի մատրիցայի վրա), սպիտակուցների մատրիցային սինթեզի սկզբունքի և կենսասինթեզի մեխանիզմների, որոշ կենսաբանական օբյեկտների (նուկլեինաթթուներ, վիրուսներ, ռիբոսոմներ) ինքնահավաքման երևույթների հայտնագործումը, *գենի* մեկուսացումը, քիմ. և կենսաբանական սինթեզը (բջջից դուրս), գենի փոխանցումը մեկ օրգանիզմից մյուսին, բազմաթիվ սպիտակուցների և նուկլեինաթթուների քիմ. կառուցվածքի վերծանումը, կենսաբանական ֆունկցիաների ու պրոցեսների ալոստերիկ և կարգավորման այլ հիմնական սկզբունքների հայտնագործումը ևն: Վերոհիշյալ նվաճումները վկայում են Մ. կ-յան կյանքի բարդ ֆունկցիաները մոլեկուլի մակարդակով տեղի ունեցող երևույթներով բացատրելու մեթոդի արդյունավետությունը: Սակայն Մ. կ-յան առաջ ծառացած է նաև ինտեգրացման մեխանիզմների ճանաչման խնդիրը, որը կյանքի երևույթների • ուսումնասիրման հետագա զարգացման ուղիներից է: Այստեղ ելային կետը միջմոլեկուլային փոխազդեցության ուժերի ուսումնասիրությունն է: Դրանք իրենց տարածական դասավորությամբ առաջացնում են այսպես կոչված «ինտեգրատիվ ինֆորմացիա», որն ինֆորմացիայի հոսքի գլխավոր մասն է: Դրանցից են բաղադրամասերից բազմակոմպոնենտ սպիտակուցների ու վիրուսների առաջացումը, նուկլեինաթթուների ընտրողական փոխազդեցությունները, բազմատեսակ սպիտակուցների և նուկլեինաթթուների համալիրների առաջացումը ևն: Ժամանակակից Մ. կ-յան խնդիրներից են՝ նուկլեինաթթուների վերծանման, նրանց եռաչափ կառուցվածքի, կենսաբանական բարդ գոյացությունների ինքնահավաքման հետագա ուսումնասիրությունը, ժառանգական հիվանդությունների կանխումը, *հորմոնների*, դեղանյութերի ազդեցության մեխանիզմների, կենսաբանական թաղանթների մոլեկուլային կառուցվածքի և գործունեության բացահայտումը ևն: Մ կ-յան ավելի հեռավոր նպատակներն են նյարդային պրոցեսների, հիշողության մեխանիզմների պարզաբանումը, գենետիկական ապարատի նպատակայաց ձևափոխումը ևն: ՍՍՀՄ-ում Մ. կ-յան ձևավորման և զարգացման գործում մեծ ավանդ ունեն Ա. Բախը, Ա. Բելոզերսկին, Ա. Բրաունշտեյնը, Վ. Էնգելգարդը, Մ. Շեմյակինը, Ա. Սպիրինը, Յու. Օվչիննիկովը, Մ Վոլկենշտեյնը: ՍՍՀՄ-ում Մ. կ-յան պրոբլեմների ուսումնասիրության խոշորագույն կենտրոններ կան Մոսկվայում, Նովոսիբիրսկում, Կիևում, Լենինգրադում: Մ. կ-յան կարևոր խնդիրները ՍՍՀՄ-ում լուսաբանվում են «Մոլեկուլյարնայա բիոլոգիա» («Молекулярная биология», 1966-ից) ամսագրում:

ՀՍՍՀ-ում Մ. կ-յան հարցերով զբաղվում են գենետիկայի ՀԳՀԻ-ի Երևանի ֆիլիալում, Երևանի համալսարանում և ՀՍՍՀ ԳԱ փորձառական կենսաբանության ինստ-ում:

*Գրկ.* Бреслер С. Е., Введение в молекулярную биологию, 3 изд., М.—Л., 1973; Уотсон Дж., Молекулярная биология гена, пер. с англ., 2 изд., 1978.

**ՄՈԼԵԿՈՒԼԱՅԻՆ ԿԵՆՍԱՖԻԶԻԿԱ**, *մոլեկուլային կենսաբանության* և *կենսաֆիզիկայի* բաժին. ուսումնասիրում է կենսապոլիմերների և դրանց համալիրների կառուցվածքը, ֆունկցիաները, կառուցվածքը կայունացնող ուժերի բնույթը, կոնֆորմացիոն անցումների հավասարակշռային ու կինետիկ բնութագրերը և այդ անցումների դերը մակրոմոլեկուլների ֆունկցիոնալ գործունեության մեջ: Մ. կ. ամենից առաջ *սպիտակուցների* և *նուկլեինաթթուների* ֆիզիկա է և կարող է սահմանվել նաև որպես *մոլեկուլային ֆիզիկայի* և *մոլեկուլային կենսաբանության* շփման տիրույթ: Մ. կ-ի պրոբլեմներն ու խնդիրներն են. պոլիմերային շղթաների (մասնավորապես սպիտակուցների և նուկլեինաթթուների) կառուցվածքի, պոլիպեպտիդային և պոլինուկլեոտիդային շղթաների կոնֆորմացիաների ուսումնասիրությունը, այդ կոնֆորմացիաների պահպանման մեջ հիդրոֆիլ և հիդրոֆոբ փոխազդեցությունների դերի բացահայտումը, ֆերմենտային կատալիզի քիմ. կինետիկայի և թերմոդինամիկայի, նուկլեինաթթուների պարույրի ներմոլեկուլային փոխազդեցությունների, կենսաբանական թաղանթների թափանցելիության մոլեկուլային մեխանիզմների և էներգետիկայի, ֆոտոսինթեզի պրոցեսում և օքսիդավերականգնման համակարգերում էներգիայի միգրացիայի մոլեկուլային հիմունքների ուսումնասիրությունը ևն: Մ. կ-ի կարևոր բաժիններից է կենսաբանական ուսումնասիրությունների ֆիզիկական մեթոդների (ռենտգենակառուցվածքային վերլուծություն, ռենտգենագրություն, սպեկտրոպոլյարիմետրիա, միջուկային, մագնիսական և էլեկտրոնային պարամագնիսական ռեզոնանսների սպեկտրներ ևն) մշակումը և կիրառումը: Մ. կ-ի առաջին աշխատանքները կարելի է համարել XX դ. 40-ական թվականներին կատարված ամինաթթուների և սպիտակուցների ռենտգենակառուցվածքային ուսումնասիրությունները: Մ. կ-ի, ինչպես նաև մոլեկուլային կենսաբանության սկիզբը համարվում է 1953-ը, երբ Ջ. Ուոտսոնը և Ֆ. Քրիքը հրապարակեցին դեզօքսիռիբոնուկլեինաթթվի կառուցվածքի երկպարույր մոդելը: Մ. կ-ի զարգացման գործում նշանակալի ավանդ են ներդրել նաև Լ. Պոլինգը, Ջ. Քենդրյուն, Մ. Պերուցը և ուրիշներ: ՍՍՀՄ-ում Մ. կ. ինտենսիվորեն զարգացել է մոլեկուլային կենսաբանության, սպիտակուցի, կենսաօրգանական քիմիայի ևն գիտահետազոտական հիմնարկությունների հիմնադրումից (1957-ից) հետո:

ՀՍՍՀ-ում Մ. կ. սկսել է զարգանալ 1960-ական թվականների սկզբից: Այժմ ՀՍՍՀ-ում մոլեկուլային կենսաֆիզիկական հետազոտություններ են կատարվում Երևանի սրտաբանության և սրտային վիրաբուժության ինստ-ի մոլեկուլային սրտաբանության լաբորատորիայում, Երևանի համալսարանի կենսաֆիզիկայի, մոլեկուլային ֆիզիկայի և կենսաֆիզիկայի, ընդհանուր ֆիզիկայի ամբիոններում, ՀՍՍՀ ԳԱ կենսաքիմիայի ինստ-ի ֆիզիկական քիմիայի լաբորատորիայում ևն: Տես նաև *Կենսաֆիզիկա*:

*Գրկ.* Сетлоу Р., Поллард Э., Молекулярная биофизика, пер. с англ., М., 1964; Волькенштейн М. В., Молекулярная биофизика, М., 1975.

*Գ. Փանոսյան*

**ՄՈԼԵԿՈՒԼԱՅԻՆ ԿՇԻՌ**, նույնացվում է *մոլեկուլային զանգվածի* հետ: Մ. կ. արտահայտությունը պաշտոնապես ընդունվել է (1860) որպես մոլեկուլի կշիռը բնորոշող մեծություն և չափվում էր կշռի ատոմական միավորներով: Ավելի ուշ այն սկսեցին օգտագործել որպես մոլեկուլի զանգվածը բնորոշող մեծություն: Որպես հարաբերական՝ չափողականություն չունեցող մե-

ծություն, Մ. կ. իր արժեքով չի տարբերվում մոլեկուլային զանգվածի արժեքից: Սակայն, լինելով *զանգվածի ատոմական միավորներով* որոշվող մեծություն, Մ. կ. փոխարինվեց (1961, Մոնրեալ) մոլեկուլային զանգված տերմինով:

**ՄՈԼԵԿՈՒԼԱՅԻՆ ՍՊԵԿՏՐՆԵՐ**, լույսի կլանման, առաքման և կոմբինացիոն ցրման օպտիկական սպեկտրներ, որոնք առաջանում են էներգետիկ մի մակարդակից մյուսը *մոլեկուլների* անցման ժամանակ: Մ. ս. բարդ կազմություն ունեն և բաղկացած են խիտ դասավորված բազմաթիվ սպեկտրային գծերից գոյացած տարբեր լայնության շերտերից: Ատոմային գծավոր սպեկտրների (տես *Սպեկտրներ ատոմային*) համեմատությամբ շերտավոր Մ. ս-ի բարդությունը բացատրվում է նրանով, որ մոլեկուլը կազմող ատոմների միջուկների նկատմամբ էլեկտրոնների շարժումից բացի (սպեկտրի ուլտրամանուշակագույն և տեսանելի տիրույթ) մոլեկուլում առկա են նաև այլ շարժումներ՝ միջուկների տատանումները հավասարակշռության դիրքերի շուրջը (ինֆրակարմիր տիրույթ) և մոլեկուլի պըտույտն իբրև ամբողջություն (սպեկտրի հեռավոր ինֆրակարմիր և գերբարձր հաճախականության տիրույթ): Շարժման բոլոր այս տեսակները քվանտացած են, այսինքն՝ դրանց համապատասխանող էներգիան կարող է ընդունել միայն որոշակի ընդհատ արժեքներ: Ըստ այդ շարժումների էլ հենց տարբերում են էլեկտրոնային, տատանողական և պտտական Մ. ս.: Մոլեկուլների էներգիայի համապատասխան մակարդակների միջև անցումները հանգեցնում են Մ. ս-ում լրացուցիչ գծերի (ատոմային սպեկտրների համեմատությամբ) առաջացման: Մ. ս-ի կոնկրետ կազմությունը տարբեր մոլեկուլների համար տարբեր է և, որպես կանոն, ավելի բարդ է դառնում, երբ ատոմների թիվը մոլեկուլում ավելանում է: Մ. ս-ի ուսումնասիրումն արժեքավոր տեղեկություններ է տալիս մոլեկուլների կառուցվածքի մասին (միջատոմային հեռավորությունների, իներցիայի մոմենտների, տատանումների հաճախականության որոշում ևն) և ընկած է մոլեկուլային որակական ու քանակական սպեկտրային վերլուծության հիմքում: Մ. ս-ի միջոցով կարելի է լուծել քիմիայի, կենսաբանության և գիտության այլ բնագավառների ամենաբազմազան խնդիրներ:

*Գրկ.* Ельяшевич М. А., Атомная и молекулярная спектроскопия, М., 1962.

*Տ. Հովակիմյան*

**ՄՈԼԵԿՈՒԼԱՅԻՆ ՎԵՐԱԽՄԲԱՎՈՐՈՒՄՆԵՐ**, ներմոլեկուլային ռեակցիաներ, որոնց հետևանքով տեղի է ունենում մոլեկուլի կառուցվածքի վերակառուցում կամ ֆունկցիոնալ խմբի տեղափոխություն մոլեկուլում: Օրինակ՝ էթիլենի օքսիդը կատալիզատորի առկայությամբ փոխարկվում է քացախալդեհիդի՝



Մ. վ. հաճախ ընթանում են մոլեկուլի բաղադրության փոփոխությամբ՝.



Իզոմերման ռեակցիաները Մ. վ-ի մասնավոր դեպքեր են (տես *Իզոմերացում*): Մ. վ. դասակարգվում են ըստ վերախմբավորվող համակարգի բնույթի՝ հագեցած, չհագեցած, արոմատիկ: Էլեկտրոնների ավելցուկ ունեցող ֆունկցիոնալ խմբի (անիոնի) տեղաշարժը դեպի էլեկտրոնների պակասորդով կենտրոնը կոչվում է նուկլեոֆիլ վերախմբավորում: Նուկլեոֆիլ Մ. վ. են պինակոլինային (Ֆիտիգ, 1860), Վագներ-Մայերի, Դեմյանովի, Վոլֆի, Բեկմանի, Հոֆմանի, Կուրցիուսի, Շմիդտի, Կնունյանցի վերախմբավորումները:




Եթե տեղափոխվող խումբը պրոտոն կամ այլ կատիոն է, ապա վերախմբավորումը կոչվում է էլեկտրաֆիլ: Այդպիսիք են Ստիվենսի, Վիտիգի, Կրովենշտեյն-Ցիմերմանի, Կրամի վերախմբավորումները:




Հայտնի են նաև ռադիկալային Մ. վ.՝

Մ. վ-ի ուսումնասիրությունը կարևոր է նպատակային օրգ. սինթեզի և քիմ. ռեակցիաների մեխանիզմները պարզելու համար: Մ. վ. կիրառվում են քիմ. արդյունաբերության մեջ մի շարք արժեքավոր օրգ. նյութեր՝ ցիկլոհեքսանից կապրոլակտամ, կումոլից ացետոն և ֆենոլ, բազմաթիվ դեղանյութեր և ներկանյութեր ստանալու համար:

*Գ. Շահինազարյան*

**ՄՈԼԵԿՈՒԼԱՅԻՆ ՈՒԺԵՐ**, տես *Միջմոլեկուլային փոխազդեցություն*:

**ՄՈԼԵԿՈՒԼԱՅԻՆ ՖԻԶԻԿԱ**, *ֆիզիկայի* բաժին, որը մարմինների մոլեկուլային կառուցվածքի դիտարկման հիման վրա ուսումնասիրում է դրանց ֆիզիկական հատկությունները տարբեր ագրեգատային վիճակներում: Մ. ֆ-ի խնդիրները, որոնք կապված են ֆիզիկական մարմինները կազմող մասնիկների (ատոմների, իոնների, մոլեկուլների) շարժման և փոխազդեցության ուսումնասիրման հետ, լուծվում են վիճակագրական ֆիզիկայի, թերմոդինամիկայի և ֆիզիկական կինետիկայի մեթոդներով: Մ. ֆ-ի առաջին ավարտուն բաժինը *գազերի կինետիկ տեսությունն* է: Այդ տեսությունը զարգացնող աշխատությունների շնորհիվ ստեղծվեց դասական *վիճակագրական ֆիզիկան* (Ջ. Մաքսվել, Լ. Բոլցման, Ջ. Գիբս): Մոլեկուլային ուժերի (մոլեկուլային փոխազդեցության) մասին քանակական պատկերացումներն սկսեցին զարգանալ *մազական երևույթների* տեսության մեջ: Այս բնագավառում կատարված հիմնարար աշխատանքներով սկիզբ դրվեց *մակերևութային երևույթների* տեսությանը: Միջմոլեկուլային փոխազդեցությունները հաշվի առնվեցին նաև իրական գազերի և հեղուկների ֆիզիկական հատկությունները բացատրելիս (Յա. վան դեր Վալս):

XX դ. սկզբին Մ. ֆ. թևակոխեց զարգացման նոր շրջան, որը բնորոշվում է մարմինների իրական մոլեկուլային կառուցվածքի ապացույցներով: Այս շրջանում կատարված աշխատանքները վերաբերում են միկրոմասնիկների *բրոունյան շարժմանը* (Ժ. Պերեն, Թ. Սվեդբերգ, Մ. Սմոլուխովսկի, Ա. Էյնշտեյն): Նյութերի մոլեկուլային կառուցվածքի հետազոտման նպատակով ռենտգենյան ճառագայթների դիֆրակցիայի, հետագայում նաև էլեկտրոնների և նեյտրոնների դիֆրակցիայի կիրառությունը հնարավորություն տվեց ճշգրիտ տվյալներ ստանալու բյուրեղական պինդ մարմինների և հեղուկների կառուցվածքի մասին (Մ. Լաուե, Ու. Հ. Բրեգ, Ու. Լ. Բրեգ, Գ. Վուլֆ, Ա. Ֆ. Իոֆֆե, Վ. Ստյուարդ, Ջ. Բեռնալ, Վ. Ի. Դանիլով և ուրիշներ):

Մ. ֆ-ի հետագա զարգացման համար կարևոր նշանակություն ունեցավ միջմոլեկուլային փոխազդեցությունների տեսությունը՝ կառուցված քվանտային մեխանիկայի պատկերացումների հիման վրա (Մ. Բոռն, Պ. Դեբայ, Ֆ. Լոնդոն, Վ. Հայտլեր): Մի ագրեգատային վիճակից մեկ այլ վիճակի նյութի անցումների տեսության զարգացումը հանգեցրեց Մ. ֆ-ի ինքնուրույն կարևոր բաժիններից մեկի՝ նոր ֆազի առաջացման ժամանակակից տեսության ձևավորմանը (Յա. վան դեր Վալս, Ու. Թոմսոն, Ջ. Գիբս, Լ. Լանդաու, Մ. Ֆոլմեր, Յա. Ֆրենկել, Ջ. Բեռնալ և ուրիշներ):

Մ. ֆ-ի ընդգրկած պրոբլեմների շրջանակը շատ ընդարձակ է. այստեղ դիտարկվում են այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ գազերի, հեղուկների և պինդ մարմինների կառուցվածքը, դրանց փոփոխությունը արտաքին պայմանների (ճնշում, ջերմաստիճան, էլեկտրական, մագնիսական դաշտեր) ազդեցությամբ, փոխանցման երևույթները (դիֆուզիա, ջերմահաղորդականություն, ներքին շփում), ֆազային հավասարակշռությունը և ֆազային անցումների պրոցեսները (բյուրեղացում և հալում, գոլորշիացում և կոնդենսացում), նյութի կրիտիկական վիճակը, տարբեր ֆազերի բաժանման սահմանում դիտվող մակերևութային երևույթները:

Մ. ֆ-ի բազմակողմանի և բուռն զարգացման հետևանքով դրանից անջատվեցին մի շարք խոշոր ինքնուրույն բաժիններ՝ վիճակագրական ֆիզիկան, պինդ մարմնի ֆիզիկան, ֆիզիկական քիմիան, մոլեկուլային կենսաբանությունը, մետա-

դաֆիզիկան, պոլիմերների ֆիզիկան, բյուրեղաֆիզիկան, ֆիզիկաքիմիական մեխանիկան ևն: Արդի գիտության մեջ և տեխնիկայում օգտագործվող բազմաթիվ նոր նյութերի կառուցվածքի բացահայտված առանձնահատկությունները խթանեցին հետազոտման զանազան գիտական մոտեցումների զարգացումը: Չնայած հետազոտման օբյեկտների ու մեթոդների բազմազանությանը, պահպանվում է Մ. ֆ-ի հիմնական դրույթը՝ նկարագրել նյութի մակրոսկոպիկ հատկությունները, ելնելով նրա կառուցվածքի միկրոսկոպիկ (մոլեկուլային) պատկերի առանձնահատկություններից:

*Գրկ.* Кикоин И. К. и Кикоин А. К., Молекулярная физика, М., 1963.

**ՄՈԼԵՎՈՆ**, Մոլովոն (լատ. Mons Livonis — Լևոնի լեռ), բերդ Լեռնային Կիլիկիայում, համանուն դաշտում, Լամբրոնի արևմտյան կողմում: 1214-ին Լևոն Բ թագավորը Մ. պարգևել էր Հիվանդանոցի խաչակիր ասպետներին: Տարբեր ժամանակներում Մ-ին տիրող իշխաններից հիշատակվում են Աժառոսը, Սիր Լևոնը: 1271-ին Մ. գրավում է արքունիքը՝ նրա իշխանի ապստամբության պատճառով: XIV դ. սկզբին Մ-ի տերն էր Օշինի եղբայր Ալինախը: XIII—XIV դդ. Մ. եղել է եպիսկոպոսանիստ: 1323-ին ենթարկվել է թուրքմենական, 1335-ին Հալեպի ամիրայության զորքերի ասպատակություններին և մեծապես ավերվել: XV դ. գտնվում էր թուրքմենների տիրապետության տակ, 1487-ին նվաճել են եգիպտացիները, իսկ հաջորդ տարում՝ օսմանյան թուրքերը: Բերդից բացի, Մ. անունն են կրում շրջակա դաշտն ու գավառը («նահանգ»), ինչպես նաև մոտակայքում գտնվող լեռնանցքըն ու վանքը:

*Գրկ.* Ալիշան Ղ., Սիսուան, Վնտ., 1885: *Թ. Հակոբյան*

**ՄՈԼԻԲԴԵՆ** (Molybdaenum), Mo, պարբերական համակարգի V պարբերության VI խմբի տարր. կարգաթիվը՝ 42, ատոմական զանգվածը՝ 95,94: d տարր է, ատոմի էլեկտրոնային կառուցվածքն է $4S^24P^64d^55S$: K, L, M թաղանթները լրացված են: Բնական Մ. բաղկացած է 92,94—98 և 100 զանգվածի թվերով իզոտոպներից, որոնցից ամենատարածվածը $^{98}Mo$-ն է (23,75%): Ստացված 13 ռադիոակտիվ իզոտոպներից (88—107) ամենակայունը $^{99}Mo(T1/2=66$ *ժամ*) է: Մ. հայտնաբերել է շվեդ Կ. *Շեելեն* (1778), և առաջինն ստացել է շվեդ քիմիկոս Պ. Հյելմը (1782)՝ $MoO_3$-ը ածխածնով վերականգնելով: Դեռ հին հույներին և հռոմեացիներին հայտնի *մոլիբդենիտ* միներալը մինչև XVIII դ. արտաքին նմանության պատճառով նույնացվում էր կապարի փայլի ու գրաֆիտի հետ և անվանվում «մոլիբդեն» (հուն. կապար): Մ. հազվագյուտ տարր է, պարունակությունը երկրակեղևում $1,1\cdot10^{-4}$ ըստ զանգվածի: Մ. պարունակվում է բուսական և կենդանական օրգանիզմներում, մասնակցում ազոտային փոխանակությանը: Բույսերում Մ. խթանում է նուկլեինաթթուների և սպիտակուցների կենսասինթեզը, մեծացնում քլորոֆիլի և վիտամինների պարունակությունը: Մ-ի անբավարարությունից շատ բույսեր չեն պտղաբերում և ոչնչանում են: Հայտնի մոտ 20 մոլիբդենային միներալներից շատերը մոլիբդատներ են (պովելիտ $CaMoO_4$, մոլիբդիտ $Fe_2(MoO_4)_3$, վուլֆենիտ $PbMoO_4$ ևն): Սակայն Մ-ի հիմնական հումքը մոլիբդենիտն է՝ $MoS_2$ (տես *Մոլիբդենային հանքանյութեր*): Մ-ի հանքավայրեր կան ԱՄՆ-ում, Մեքսիկայում, Չիլիում, Կանադայում, Նորվեգիայում, Ավստրալիայում, խոշոր հանքավայրեր՝ ՍՍՀՄ-ում (նաև ՀՍՍՀ-ում՝ Քաջարան, Ագարակ):

Մ. արծաթասպիտակավուն մետաղ է, փոշին՝ մոխրագույն, հալ. ջերմաստիճանը՝ 2620±10°C, եռմանը՝ մոտ 4800°C, խտությունը՝ 10200 *կգ/մ³*: Մեխանիկական հատկությունները կախված են մաքրության աստիճանից և մշակման եղանակից: Միացություններում ցուցաբերում է +2, +3, +4, +5 և առավել հաճախ +6 օքսիդացման աստիճաններ: Մետաղների լարվածության շարքում գտնվում է ջրածնից քիչ ձախ: Ջրածնի հետ չի միանում: Աղաթթվում և նոսր ծծմբական թթվում լուծվում է շատ դանդաղ (80°C): Հեշտ լուծվում է ազոտական և ծծմբական թթուների խառնուրդում, արքայաջրում, ջրածնի գերօքսիդում, տաք ազոտական թթվում, չի լուծվում ալկալիներում: Ջրային գոլորշիներում 700°C-ից բարձր տաքացնելիս օքսիդանում է, առաջացնելով $MoO_2$: Սովորական ջերմաստիճաններում կայուն է օդում, 400°C-ում օքսիդանում է դանդաղ, 600°C-ից բարձր՝ արագ, առաջացնելով $MoO_3$, որի կանաչավուն երանգով սպիտակ բյուրեղները (հալ. ջերմաստիճանը՝ 795°C, եռմանը՝ 1155°C) վատ են լուծվում ջրում, լավ՝ ալկալիներում, առաջացնելով մոլիբդենական թթուներ և մոլիբդատներ: Պարզագույն մոլիբդենական թթուներն են մոնոհիդրատը՝ $H_2MoO_4$ և երկհիդրատը՝ $H_2MoO_4\cdot H_2O$: Մ-ին հատուկ է $xMoO_3\cdot y(H_2O)$ $(x>y)$ բազմաթթուներ $H_6Mo_7O_{24}$, $H_4Mo_8O_{26}$, $H_{12}Mo_{24}O_{78}$ ևն առաջացնելը: Մոլիբդենական թթուների ալկալիական լուծույթներում միշտ կան $MoO_4^{-2}$ իոններ, իսկ խիտ լուծույթներում (pH= 0,9—6) նաև $Mo_3O_{11}^{-4}$, $H_3MoO_6{}_{21}^{-3}$ ևն անիոններ:

Մոլիբդատների թթվային լուծույթների վրա վերականգնիչներ ($SO_2$, $H_2S$, Zn ևն) ավելացնելիս ստացվում է ամորֆ նստվածք, որը մետաքսը ներկելու համար օգտագործվող մոլիբդենային կապույտ է: Մ-ի (IV) օքսիդը՝ $MoO_2$ (մուգ շագանակագույն բյուրեղներ), չի լուծվում ջրում և թթուներում: Ազոտական թթվում օքսիդանում է: Հայտնի են $Mo_nO_{3n-1}$ բաղադրության բազմաթիվ օքսիդներ ($Mo_9O_{26}$, $Mo_8O_{23}$ ևն): Այսպիսով Մ-ի թթվածին պարունակող միացություններին հատուկ է պոլիմերային մոլեկուլներ առաջացնելը: Մ. ֆտորի հետ միանում է առանց տաքացնելու, քլորի հետ՝ 250°C-ում և առաջացնում է $MoF_6$ և $MoCl_5$ հեշտ ցնդող նյութերը: Մ-ի բրոմիդները և յոդիդները անկայուն են: Տաքացնելիս Մ. միանում է ծծմբի (440°C), ազոտի (1500°C), ածխածնի (1100°C), սիլիցիումի (1200°C) հետ: $MoS_2$-ի մուգ մոխրագույն բյուրեղները նման են գրաֆիտին, ունեն շփման փոքր գործակից: Հալվում են քայքայվելով (1700—1800°C): Օդում տաքացնելիս (400—600°C) օքսիդանում են մինչև $MoO_3$, ջրածնում (800°C)՝ վերականգնվում են մինչև Մ-ի: Ջրում և նոսր թթուներում չեն լուծվում: Լուծվում են արքայաջրում, տաք և խիտ ծծմբական և ազոտական թթուներում: Մ-ի կարբիդը՝ $Mo_7C$, և սիլիցիդը՝ $MoSi_2$, դժվարահալ են և քիմիապես կայուն: Co-ի հետ Մ. առաջացնում է հեշտ ցնդող կարբոնիլ՝ $Mo(CO)_6$, մետաղների հետ՝ համաձուլվածքներ, որոնցից շատերը (W-ի, Ti, V-ի, Li-ի հետ) ջերմակայուն են և տաքացնելիս պահպանում են մեխանիկական կայունությունը: Մ-ի համաձուլվածքները Ee-ի, Li-ի, Cr-ի, Co-ի հետ կայուն են նաև թթուների նկատմամբ:

Մ. և նրա համաձուլվածքները ստանալու համար մոլիբդենիտային կոնցենտրատները (47—50% $MoS_2$) ենթարկում են օքսիդացնող բովման, ապա վերականգնում ջրածնով (900—1000°C): Ստացված Մ-ի փոշին վերամշակում են հալելով կամ մամլելով, կտորները՝ կռելով, գլանելով կամ ձգելով: Առաձգական թաղանթներում հիդրոստատիկ մամլման միջոցով ստանում են 100—200 *կգ*-անոց կտորներ: Ավելի մեծ պատրաստուկներ (500—2000 *կգ*) ստանում են էլեկտրական աղեղում: Արդյունահանվող Մ-ի 70—80%-ը ծախսվում է լեգիրացված պողպատներ ձուլելու համար: Մ և նրա համաձուլվածքներն օգտագործվում են էլեկտրավակուումային սարքերի արտադրության մեջ՝ անոդներ, ցանցեր, կաթոդներ, շիկացման թելերի հենարաններ և պատվանդաններ պատրաստելու համար: Մ-ի լարերն ու ժապավեններն օգտագործվում են տաքացուցիչ բարձրջերմաստիճանային շիկացման վառարաններում: Մ-ից և նրա համաձուլվածքներից պատրաստում են նաև միջուկային ռեակտորների, հրթիռների և այլ թռչող սարքերի բարձր ջերմաստիճաններում աշխատող մասեր:

$MoS_2$-ն օգտագործվում է որպես քսանյութ, Մ-ի օքսիդները՝ կատալիզատորներ: Մ-ի ավելցուկը կենդանիների մոտ առաջացնում է քրոնիկական մոլիբդենային տոքսիկոզ, որն ուղեկցվում է լուծով, նյութափոխանակության խանգարումով և հյուծում է օրգանիզմը: *Լ. Գրիգորյան*

**ՄՈԼԻԲԴԵՆԱՅԻՆ ՀԱՆՔԱՆՅՈՒԹԵՐ**, *մոլիբդենի* բնական միացություններ, որոնցից տնտեսապես շահավետ է մետաղի կորզումը: Գլխավոր միներալը *մոլիբդենիտն* է, մոլիբդեն պարունակող մյուս միներալները (վուլֆենիտ, պովելիտ և մոլիբդիտ) արդ. հանքավայրեր չեն առաջացնում: Մ. հ. երկրակեղևում ծագումով կապված են գրանիտոիդային ինտրուզիաների հետ: Արդ. հանքավայրերին են դասվում. 1. մոլիբդենային և հաճախ վոլֆրամմոլիբդենային սկառնային հանքանյութերը՝ գրանիտոների և կրաքարերի կոնտակտում զարգացած նռնաքարապիրոքսենային ապարներում, 2. հիդրոթերմալ ծագման քվարցմոլիբդենային երակները մետաղի բարձր պարունակությամբ և 3. մոլիբդենային ու պղինձ-մոլիբդենային երակիկացանավոր հանքանյութերը՝ գրա-

նիտային ապարների քվարցացած տեղամասերում, մոլիբդենի ցածր պարունակությամբ, բայց հանքանյութի հսկայական պաշարներով: Հիմնականում մշակում են երակիկացանավոր հանքանյութերը մոլիբդենի 0,05—0,08% պարունակությամբ, որոնց բաժին է ընկնում մոլիբդենային հարստանյութերի համաշխարհային արտադրանքի 90%-ից ավելին: Մ. հ-ի խոշոր հանքավայրեր կան ՍՍՀՄ-ում՝ ՀՍՍՀ-ում (Քաջարան, Ագարակ, Դաստակերտ, Հանքավան), Հյուսիսային Կովկասում, Ուզբեկստանում, Ղազախստանում, արտասահմանում՝ ԱՄՆ-ում, Կանադայում, Մեքսիկայում, Չինաստանում, Ավստրալիայում:

**ՄՈԼԻԲԴԵՆԱՅԻՆ ՊԱՐԱՐՏԱՆՅՈՒԹԵՐ**, տես *Միկրոպարարտանյութեր*:

**ՄՈԼԻԲԴԵՆԻՏ**, մոլիբդենային փայլ, միներալ սուլֆիդների դասից: Քիմ. կազմը՝ $MoS_2$ (պարունակում է 60% Mo և 40% S, խառնուրդների ձևով մինչև 0,3% Re): Բյուրեղագիտական համակարգը հեքսագոնային է: Առաջացնում է պրիզմատիկ և տակառաձև բյուրեղներ, սովորաբար՝ ցանավոր, թեփուկավոր, ֆեռոլիտային ագրեգատներ: Գույնը՝ երկնագույն-մոխրավուն: Փայլը՝ մետաղի: Կարծրությունը՝ 1—1,5, խտությունը՝ 4620—4800 *կգ/մ³*: Հանդիպում է թթու հրային ապարների հետ կապված բարձրմիջին ջերմաստիճանի հիդրոթերմալ հանքավայրերում, պեգմատիտներում, գրեյզեններում ևն: Մ-ի հանքավայրեր ՍՍՀՄ-ում հայտնի են Կովկասում (այդ թվում՝ ՀՍՍՀ-ում), Անդրբայկալում, Միջին Ասիայում, արտասահմանում՝ ԱՄՆ-ում, Մեքսիկայում, Նորվեգիայում: *Մոլիբդենային հանքանյութերի* կարևորագույն միներալն է: ՀՍՍՀ Քաջարանի, Ագարակի, Դաստակերտի, Հանքավանի պղնձամոլիբդենային հանքանյութերը պատկանում են երակիկացանավոր տիպին:

**ՄՈԼԻԵՐ** (Molière) Ժան-Բատիստ (իսկական՝ Ժան-Բատիստ Պոքլեն, Poquelin, 15.1.1622, Փարիզ —17.2.1673, Փարիզ), ֆրանսիացի դրամատուրգ, դերասան, թատերական գործիչ: «Բարձր կատակերգության» ժանրի հիմնադիրը, բեմական արվեստի ռեֆորմատոր, ռեալիստական դրամատուրգիայի նախակարապետը: Ֆրանս. ժող. թատրոնի ավանդույթները համադրելով Վերածննդի մարդասիրական գաղափարների հետ, օգտագործելով կլասիցիզմի փորձը՝ Մ. ստեղծել է նոր տիպի (սոցիալ-կենցաղային) կատակերգություն, ծաղրել է պալատականների դասային նախապաշարումները, մերկացրել բուրժ. հասարակության սոցիալական այլանդակությունները: Պիեսներում առաջ է քաշել գեղարվեստական նոր սկզբունքներ՝ կյանքի ճշմարտություն և կերպարների անհատականացում:

Ավարտել է Կլերմոնի ճիզվիտական կոլեջը (1639): Կրթությամբ իրավաբան էր, սակայն Մոլիեր կեղծանունով իրեն նվիրել է թատերական գործին: 1643-ին մի քանի դերասանների ու սիրողների հետ կազմակերպել է «Փայլուն թատրոն»: Մոտ երկու տարի հետո, լավ խաղացանկի և մասնագետ կատարողների բացակայության պատճառով, իր խաղընկերների հետ թողել է Փարիզը (1645), 13 տարի շրջագայել Ֆրանսիայի գավառներում: Այդ խմբի համար Մ. գրել է փոքրածավալ ուրախ կատակերգություններ: «Ճարպիկը կամ Խոչընդոտները» (բեմ. 1655, հրտ. 1663), «Սիրային անախորժություն» (բեմ. 1656, հրտ. 1663) առաջին մեծածավալ կատակերգությունների սյուժեն վերցված է իտալ. պիեսներից: Գավառներում Մ-ի և նրա խմբի ունեցած հաջողությունը հնարավորություն տվեց վերադառնալու Փարիզ: Մ. իր կատակերգություններով, սկըսած «Ծիծաղելի սեթևեթուհիները» (բեմ. 1659, հրտ. 1660) պիեսից, պայքարել է սալոնային արվեստի դեմ, հաստատել ռեալիստական կատակերգության ժանրը: Այդ ժանրի բնորոշ գծերն արտացոլվել են Մ-ի առաջին «բարձր կատակերգության» («Կանանց դպրոցը», բեմ. 1662, հրտ. 1663) մեջ, որը նրա դեմ հանեց ազնվականներին և պահպանողական գրողներին ու դերասաններին: Ի պատասխան դրա՝ Մ. բեմադրեց «Կանանց դպրոցի» քննադատությունը» (բեմ. և հրտ. 1663) և «Վերսալյան էքսպրոմտ» (բեմ. 1663, հրտ. 1682) փոքրիկ պիեսները, որոնցում արտահայտեց իր գեղագիտական հայացքները: Մ-ի տաղանդն իր ծաղկմանը հասավ «Տարտյուֆ» (բեմ. 1664 և անմիջապես արգելվեց, բեմ. և հրտ. 1669, հայ. հրտ. «Թարթյուֆ», 1874), «Դոն Ժուան» (բեմ. 1665, հրտ. 1683), «Միզանթրոպ» (բեմ. 1666, հրտ. 1667) կատակերգություններում, որոնցում ծաղրել է բարեպաշտության և առաքինության դիմակի տակ թաքնված կեղծավորությունը, ազնվականության հոգևոր սնանկացումն ու անպատկառությունը: Մ-ի վճռականությունը, անհաշտվողականությունը հատկապես երևում է հասարակ մարդկանց՝ գործունյա, խելացի, կենսուրախ սպասավորի և սպասուհու կերպարներում («Քաղքենին ազնըվական», բեմ. 1670, հրտ. 1671, հայ. հրտ. 1903, «Երևակայական հիվանդը», բեմ. 1673, հրտ. 1674, հայ. հրտ. 1886): Մ. ֆրանս. կատակերգությունը բարձրացրել է մեծ արվեստի մակարդակի՝ պահպանելով նրա օրգ. կապը ժող. ֆարսի հետ («Սկապենի արարքները», բեմ. և հրտ. 1671):



Մոլիեր

Հայերը Մ-ի պիեսները բեմադրել են դեռևս XIX դ. 1-ին քառորդում: Մ-ի պիեսները մտել են Մխիթարյանների դպրոցական թատրոնի խաղացանկը՝ «Երևակայական հիվանդ» (1812), «Ակամա բժիշկ» (1813): Հետագայում բեմադրվել է նաև «Տարտյուֆ»-ը: XIX դ. կեսերին հիմնադրվել է Կ. Պոլսի «Արևելյան թատրոնը», որն առաջին իսկ թատերաշրջանում իր խաղացանկում ունեցել է մոլիերյան երկու պիես՝ «Ժլատը» և «Տարտյուֆ»-ը, հաջորդ տարիներին՝ «Պուրսոնյակ», «Ակամա բժիշկ», «Բռնի ամուսնություն», «Ժորժ Դանդեն», «Միզանթրոպ» և «Սերը՝ արարիչ» պիեսները: Մ-ի կերպարների դերակատարումով հռչակվել է հայ բեմի նշանավոր կատակերգակ Դավիթ *Թրյանցը*: Հիշատակելի է նաև Գ. Ռշտունու խաղը: Հայ դերասանները մոլիերյան խաղացանկով շրջագայել են Եգիպտոսում, Բուլղարիայում, Հունաստանում և Թուրքիայում: Արևելյան Հայաստանում նույնպես բազմաթիվ դերասաններ (Գ. Չմշկյան, Արամ Վրույր, Սիրանույշ, Հ. Աբելյան, Ա. Արմենյան) հանդես են եկել մոլիերյան դերակատարումներով: Սովետական շրջանում ևս Մ. արժանի տեղ է գրավել հայ բեմում (Ա. Արմենյան, Վ. Փափազյան, Ա. Ոսկանյան և ուրիշներ): Գ. Սունդուկյանի անվ. դրամատիկական թատրոնը իր ձևավորման հենց սկզբից անդրադարձել է Մ-ի կատակերգություններին, բեմադրել «Դոն Ժուան» (1922), «Երևակայական հիվանդը» (1923, 1933), «Տարտյուֆ» (1924), «Քաղքենին ազնվական» (1936) և այլ պիեսներ: Մ-ի ազդեցությունը մեծ է եղել հայ գրողների՝ Խորեն Գալֆայանի, Նիկողայոս Փուղինյանի, Գաբրիել Սունդուկյանի, Հակոբ Պարոնյանի վրա, որոնք ստեղծել են նմանատիպ պիեսներ: Մ-ի հայ առաջին թարգմանիչներից են Տ. Տետեյանը, Գ. Չմշկյանը:

1973-ին Հայաստանում նշվել է Մ-ի մահվան 300-ամյակը:

*Երկ.* Œuvres, éd. Despois et Mesnard, v. 1—13, P., 1873—1900 (Collect. «Les grands écrivains de la France»); Փուրսոնեագ, ԿՊ, 1861: Տղամարդկանց խրատ, Թ., 1880: Ագահն, Զմյուռնիա, 1881: Սերը բժիշկ է, Զմյուռնիա, 1881: Ակամա բժիշկ, Զմյուռնիա, 1882: Տարտյուֆ, Բաքու, 1898: Թռչող բժիշկն, Բաքու, 1900: Կատակերգք, հ. 1—2, Իզմիր, 1903: Ժորժ Դանդեն կամ Շփոթված ամուսինը, Թ., 1907: Բարբուլիե, Թ., 1915: Երկու խուլեր, ԿՊ, 1921: Բռնի ամուսնություն, ԿՊ, 1930: Полн. собр. соч., т. 1—4, М., 1965—67.

*Գրկ.* Սողոմոնյան Ս., Դանթե:—Պետրարկա:—Շեքսպիր:—Մոլիեր, Ե., 1973: Булгаков М., Жизнь господина де Мольера, М., 1962.
*Ա. Գասպարյան*

**ՄՈԼԻԶԵ** (Molise), մարզ Հարավային Իտալիայում, Ապենինյան թերակղզում: Տարածությունը 4,4 հզ. *կմ²* է, բնակչությունը՝ 342 հզ. (1978), վարչական կենտրոնը՝ Կամպոբասսո: Ծովափնյա մասը բլրավոր հարթավայր է, կենտրոնական մասում՝ Մոլիզե սարահարթը, հվ-ում՝ Մատեսե կրաքարային լեռնաշղթան (բարձրությունը՝ մինչև 2050 *մ*, Մեյետո լեռ): Տնտեսության հիմքը գյուղատնտեսությունն է: Մշակում են ցորեն, ընդեղեն, խաղող, ձիթենի և այլ կուլտուրաներ: Կա անասնապահություն: Արդյունաբերությունը կապված է գյուղատնտ. արտադրանքի վերամշակման հետ: Զարգացած է տնայնագործությունը: Ստեղծվել են տուրիստական խոշոր համալիրներ:

**ՄՈԼԼԱ ՍՈՒԼԵՅՄԱՆ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Էրզրումի վիլայեթի Ալաշկերտ գավառում: 1909-ին ուներ 80 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ:

Մ. Ս-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին: Փրկվածները բնակություն են հաստատել տարբեր երկրներում:

**ՄՈԼԼԱԿԱՐԱ**, ցեխաբուժական կուրորտ Թուրքմենական ՍՍՀ-ում, Կարակումի անապատում, Ջեբել երկաթուղային կայարանից 5 *կմ*, Կրասնովոդսկից 134 *կմ*, Աշխաբադից 555 *կմ* հեռու: Ամառը շոգ է, (հուլիսի միջին ջերմաստիճանը՝ 31°C), ձմեռը՝ մեղմ (հունվարի միջին ջերմաստիճանը՝ 1°C), տարեկան տեղումները՝ 130 *մմ*: Բուժիչ միջոցները՝ Մոլլակարա լճի տղմոտ ցեխը և բնաղաջուրը: Բուժվում են հենաշարժական ապարատի, գինեկոլոգիական, ծայրամասային նյարդային համակարգի հիվանդություններով տառապողները:

**ՄՈԼԼԱՔՅԱՆԴ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Բուլանըխ գավառում: 1909-ին ուներ 25 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ի Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է աքսորի ճանապարհին:

**ՄՈԼԼԵ** (Mollet) Գի (1905—1975), ֆրանսիացի քաղաքական և պետական գործիչ: Մասնագիտությամբ՝ ուսուցիչ: 1923-ից՝ ֆրանսիական սոցիալիստական կուսակցության գործիչ: Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ (1939—45) մասնակցել է *Դիմադրության շարժմանը*: Եղել է Ազգային ժողովի դեպուտատ (1946-ից), ֆրանս. սոցիալիստական կուսակցության գլխավոր քարտուղար (1946—69), Սոցիալիստական ինտերնացիոնալի փոխնախագահ (1951—1969), պետ. մինիստր (1946—47, 1950—1951), պրեմիեր մինիստր (1956—57): Մ-ի կառավարությունը անցկացրել է որոշ սոցիալական ռեֆորմներ: Ֆրանսիայի մասնակցությունը Եգիպտոսի դեմ անգլո-ֆրանս-իսրայելական ագրեսիային (1956), գաղութային պատերազմի շարունակումը Ալժիրում (1954—62) պատճառ են դարձել դեմոկրատական ուժերի պառակտման և Մ-ի հրաժարականին (1957): Մ. աջակցել է դեմոկրատական և սոցիալիստական ձախ ուժերի ֆեդերացիայի ստեղծմանը (1965): 1969-ից Սոցիալիստական հետազոտությունների համալսարանական կենտրոնի նախագահն էր: 1956 և 1963-ին պաշտոնական այցով եղել է ՍՍՀՄ-ում:

**ՄՈԼԿՈՉԱՆՈՎ** Միխայիլ Վասիլևիչ (1877—1937), սովետական ռազմական գործիչ, Հայկական ՍՍՀ զորքերի հրամանատար (1921): Սովորել է Կիևի ռազմ. ուսումնարանում, ապա կայսերական ռազմ. ակադեմիայի դասընթացներում: Մասնակցել է ռուս-ճապոնական (1904—05) և առաջին համաշխարհային (1914—18) պատերազմներին: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության օրերին հարել է հեղափոխական զինվորներին ծառայության է մտել կարմիր բանակ: Եղել է դիվիզիայի պետ, 1919—20-ին՝ բանակի (8-րդ, ապա 14-րդ) հրամանատար: 1921-ին Հայաստանում ղեկավարել է դաշնակցականների փետրվարյան խռովության ջախջախումը և աշխատավորների պայքարը սովետական կարգերի ամրապնդման համար: Պարգևատրվել է ՀՍՍՀ Կարմիր դրոշի շքանշանով: Մասնակցել է ՀՍՍՀ կարմիր բանակի վերակառուցմանը: 1924-ից ԲԳԿԲ-ում կատարել է Գլխավոր շտաբի հատուկ հանձնարարություններ:

*Գրկ.* Мнацаканян А. Н., Посланцы Советской России в Армении, Е., 1959.

*Գ. Մանուկյան*

**ՄՈԼՅՈՒՍԿՆԵՐ**, տես *Փափկամորթներ*:

**ՄՈԼՆԱՐ** (Մոլնարյան) Անտալ (Անտոն) Գրիգորի (17.11.1848, Գեռլա—6.2.1902, Բուդապեշտ), հունգարահայ պատմաբան, բանասեր, հրապարակախոս, քաղաքական գործիչ: Սովորել է Կլուժի և Բուդապեշտի համալսարաններում, ստացել իրավագիտության և քաղաքագիտության դոկտորի կոչում: 1871-ին Գեռլայից ընտրվել, ապա 3 անգամ վերընտրվել է Հունգարիայի պառլամենտի անդամ, եղել պառլամենտի քարտուղար: Իրավագիտություն է դասավանդել Բուդապեշտի համալսարանում: Տարբեր տարիներ խմբագրել է «Հունգարական թերթեր» քաղ. լրագիրը, «Հունգարիան և տիեզերքը» հունգ. պարբերականը: Գրել է Հունգարիայի և համաշխարհային պատմության վերաբերյալ աշխատություններ, Գեռլայի նվիրված «Հայաքաղաքի տեղագրությունը» (1871) մենագրությունը: Եղել է Գեռլայի *«Արմենիա»* ամսագրի հիմնական աշխատակիցներից, այնտեղ հրատարակել հայագիտական հոդվածներ, որոնցից առավել կարևոր են «Հայերը Բուդայի ազատագրման ժամանակ» (1877, № 1), «Մովսես Խորենացի, հայ պատմահոր կյանքն ու գործը» (1896, № 9—12), «Հայաստանի պատմությունը և գրականությունը» (1898, № 3—8), «Հայերը Թուրքիայում» (1891, № 9—12) են: Ունի թարգմանություններ (ֆրանսերենից): Թաղված է Գեռլայի հայկ. գերեզմանատանը:

*Ս. Քոլանջյան*

**«ՄՈԼՆԻԱ»**, Երկրի արհեստական արբանյակների (ԵԱԱ) սովետական սերիայի անվանում: Նախատեսված է հեռուստատեսային ծրագրերի վերատրանսլյացիայի և հեռագրային, հեռախոսային ու լուսահեռագրային կապի («Մ.—1», «Մ.—2», Մ.—3»), ինչպես նաև շուրջստացիոնար ուղեծրից ռադիոկապի և հեռուստատեսության փորձնական հաղորդումների («Մ.—1Ս») համար: «Մ.» մտնում է *«Մոլնիա-Օրբիտա»* տիեզերական կապի համակարգի մեջ: Առաջին «Մ.—1» ԵԱԱ արձակվել է 1965-ի ապրիլի 23-ին: «Մ.—2» ԵԱԱ-ի (1965-ի հոկտ. 14-ին) արձակմամբ սկսըվել է հեռավոր երկկողմանի հեռուստատեսային և հեռախոսահեռագրային կապի համակարգի փորձնական շահագործումը: 1967-ին ստացվել է տիեզերքից Երկրի գունավոր հեռուստատեսային պատկերը: Մինչև 1980-ի հունվարի մեկը արձակվել է 74 «Մ.» ԵԱԱ, որոնք ՍՍՀՄ տարածքում և ուրիշ երկրներում ապահովում են կանոնավոր կապ և հեռուստատեսային հաղորդում:

**«ՄՈԼՆԻԱ-ՕՐԲԻՏԱ»**, տիեզերական կապի սովետական համակարգ: Բաղկացած է *«Մոլնիա»* և *«Ռադուգա»* Երկրի արհեստական արբանյակներից և *«Օրբիտա»* ընդունող և հաղորդող երկրային կայանից: Նախատեսված է հեռուստատեսային ծրագրերի վերատրանսլյացիայի, հեռագրային, հեռախոսային և լուսահեռագրային կապի և այլ նպատակների համար: Գործում է 1967-ից:



«Մոլնիա—1» կապի արբանյակը

**ՄՈԼՈԴՅՈԺՆԻ**, ավան ՌՍՖՍՀ Կրասնոդարի երկրամասի Բելորեչենսկի շրջանում, Փշիշ գետի աջ ափին, շրջկենտրոնից 18 *կմ* հարավ-արևմուտք: Բնակիչները՝ ռուսներ, հայեր, ուկրաինացիներ: Սովետական տնտեսությունն զբաղվում է բանջարաբուծությամբ և հացահատիկային կուլտուրաների մշակությամբ, այգեգործությամբ, անասնապահությամբ, թռչնաբուծությամբ: Ունի միջնակարգ դպրոց, ակումբ, կինո, գրադարան, կապի բաժանմունք, մանկապարտեզ, հիվանդանոց: Մ. հիմնադրել են Սամսունից եկած հայերը, 1885-ին:

**ՄՈԼՈԿԱՆՆԵՐ**, հ ո գ և ո ր ք ր ի ս տ ո ն յ ա մ ո լ ո կ ա ն ն ե ր, կրոնական աղանդ Ռուսաստանում: Ծագել է XVIII դ. 2-րդ կեսին Տամբովի գավառում, հետագայում տարածվել է երկրի այլ շրջաններում: «Մ.» անվանումը կապում են ավետարանական «հոգևոր կաթի» («словесное молоко»)՝ իրենց քարոզած Հիսուս Քրիստոսի ճշմարիտ ուսմունքի, ինչպես նաև պաս օրերին կաթ («молоко») խմելու սովորույթի հետ: Մ. այլաբանորեն են մեկնաբանում Աստվածաշունչը, քրիստոնեական դավանաբանությունը, խորհուրդները ևն, մերժում են ուղղափառության արտաքին-ծիսական կողմը, եկեղեցու աստիճանակարգը, կուսակրոնությունը, սրբերի ու խաչի պաշտամունքը ևն: Նրանք առաջ են քաշել ավետարանական քրիստոնեության գաղափարները և «բարի գործերի» (բարոյական կատարելագործում, աշխատասիրություն, փոխօգնություն ևն) բարոյախոսությունը՝ որպես երկրի վրա «աստվածային թագավորության» հաստատման միջոց: Մոլոկանությունը սոցիալական բողոքի կրոնական ձև էր ընդդեմ ճորտատիրության և եկեղեցու: Իշխանություններն ու եկեղեցին հալածել են Մ-ին, որը հանգեցրել է XVIII դ. վերջին նրանց զանգվածային վերաբնակեցմանը երկրի այլ շրջաններում, այդ թվում Անդրկովկասում:

Մ-ի առաջին բնակավայրերը Հայաստանում հիմնվել են XIX դ. 30-ական թթ.:

XIX դ. 50-ական թթ. Երևանի նահանգի Մ-ից սոցիալական հակասությունների հողի վրա առանձնացան «պրիգունները» (ռուս. прыгуны — ցատկողներ): Այս աղանդին հատուկ է միստիկական էքստազային պաշտամունքը (կրոնական էքստազ, ցատկել, թռչել, ցնցվել), էսխատոլոգիայի (ուսմունք աշխարհի վերջի և ահեղ դատաստանի մասին) և քիլիազմի (ուսմունք երկրի վրա աստծու հազարամյա թագավորության մասին) գաղափարները: ՀՍՍՀ-ում կան «պոստոյաննիների» (ռուս. постоянные — մշտականներ), «պրիգուննների», «պրիգուն մաքսիմականների» (հասարակությունից առավել մեկուսացված և ինքնամփոփ), «սուբոտնիկների» (ռուս. субботники — շաբաթականներ) համայնքներ: Աղանդավորները հիմնականում միջին և բարձր տարիքի կիսագրագետ մարդիկ են, սակայն երիտասարդությունը ձգտում է կրթության և աստիճանաբար հեռանում աղանդից: Մոլոկանության պահպանման գործում մեծ է ավանդույթների, ընտանեկան, ազգակցական կապերի, պահպանողական կրոնական-հասարակական կարծիքի, նյութական և բարոյական փոխօգնության դերը: ՀՍՍՀ-ի Մ-ի համախմբմանը նպաստում է ոչ միայն կրոնական ընդհանրությունը, այլև այն, որ նրանք առանձին էթնիկական հանրույթ են: Չնայած սկզբնական շրջանի դեմոկրատական գաղափարներին, մոլոկանությունը հետադիմական կրոնական գաղափարախոսության տարատեսակ է:

*Գրկ.* Дингельштедт Н., Закавказские сектанты в их семейном и религиозном быту, СПБ, 1885; Клибанов А. И., История религиозного сектантства в России, М., 1965; гл. IV; Козлова К. И., Из опыта изучения молокан Армении, в кн.: Конкретные исследования современных религиозных верований, М., 1967.

*Վ. Խալաթյան*

**ՄՈԼՈՏՈՎ** (ծածկանունը, իսկական ազգանունը՝ Սկրյաբին) Վյաչեսլավ Միխայլովիչ [ծն. 25.2(9.3). 1890, Նոլինսկ (այժմ՝ Սովետսկ, Կիրովի մարզում)], ՍՍՀՄ քաղաքական գործիչ: Կոմունիստական կուսակցության անդամ 1906-ից: Հեղափոխական աշխատանք է կատարել Ռուսաստանի տարբեր քաղաքներում ու շրջաններում: 1917-ի Փետրվարյան հեղափոխության ժամանակ եղել է կուսակցության ԿԿ Ռուսական բյուրոյի, Հոկտեմբերյան զինված ապստամբության (Պետրոգրադ) օրերին ՌՀԿ անդամ, որից հետո կատարել է ղեկավար սովետական և կուսակցական աշխատանք: 1920-ին եղել է Ուկրաինայի Կ(բ)Կ ԿԿ, 1921—30-ին՝ ՀամԿ(բ)Կ ԿԿ քարտուղար, 1930—41-ին՝ ՍՍՀՄ ԺԿԽ նախագահ, միաժամանակ (1939-ի մայիսից) ՍՍՀՄ արտաքին գործերի ժողկոմ, 1941—57-ին՝ ՍՍՀՄ ԺԿԽ (ապա՝ Մինիստրների խորհրդի) նախագահի առաջին տեղակալ, միաժամանակ (1941—49, 1953—57) ՍՍՀՄ արտաքին գործերի ժողկոմ (ապա՝ մինիստր): 1921-ից կուսակցության ԿԿ քաղբյուրոյի անդամության թեկնածու, 1926—52-ին՝ անդամ: Հայրենական մեծ պատերազմի (1941—45) ժամանակ՝ Պաշտպանության պետ. կոմիտեի նախագահի տեղակալ: Մասնակցել է Թեհրանի (1943), Ղրիմի (1945), Պոտսդամի (1945) երեք դաշնակից տերությունների (ՍՍՀՄ, ԱՄՆ, Մեծ Բրիտանիա) կառավարությունների ղեկավարների կոնֆերանսներին: 1952—57-ին եղել է ՍՄԿԿ ԿԿ Նախագահության անդամ: ՀամԿԳԿ, ՍՍՀՄ ԿԳԿ անդամ, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ: 1957—60-ին՝ ՍՍՀՄ դեսպանը ՄԺՀ-ում: 1962-ից անցել է կենսաթոշակի:

**ՄՈԼՈՐԱԿԱՁԵՎ ՄԻԳԱՄԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ**, տես *Միգամածություններ* գալակտիկական:

**ՄՈԼՈՐԱԿԱՅԻՆ ՀԱՄԱԿԱՐԳ**, տես *Արեգակնային համակարգ*:

**ՄՈԼՈՐԱԿՆԵՐ**, *Արեգակի* շուրջը պտտվող, գրեթե գնդաձև երկնային մարմիններ: Չունեն սեփական լույս, լուսավորվում են Արեգակից: Հայտնի են 9 մեծ (ըստ Արեգակից ունեցած միջին հեռավորության՝ *Մերկուրի*, *Վեներա*, *Երկիր*, *Մարս*, *Յուպիտեր*, *Սատուրն*, *Ուրան*, *Նեպտուն* և *Պլուտոն*) և շուրջ 2000 փոքր Մ. (Մարսի և Յուպիտերի ուղեծրերի միջև): Մ-ի տեսանելի շարժումները պայմանավորված են երկնոլորտում նրանց օրական պտույտի և Արեգակի շուրջը ուղեծրային պտույտի համատեղ ազդեցությամբ: Այդ պատճառով Մ. *աստղերի* նկատմամբ տեղափոխվում են մե՛րթ դեպի արևելք (ուղիղ շարժում), մե՛րթ դեպի արևմուտք (հակադարձ շարժում)՝ օղակներ գծելով: Նման «տարօրինակ» շարժումներն էլ հիմք են ծառայել «մոլորակ» անվանմանը («մոլորվել» բառից): Մ-ի շարժումները որոշվում են *Կեպլերի օրենքներով*: Մեծ Մ., երբեմն, բաժանում են 2 խմբի. ներքին Մ. (մինչև Մարսը ներառյալ) և արտաքին Մ. (մնացած բոլորը): Աստղադիտակով մեծ Մ. դիտվում են սկավառակի տեսքով: Դրանք բոլորն Արեգակի շուրջը պտտվում են միևնույն ուղղությամբ: Դրանց ուղեծրերի հարթություններն իրարից քիչ են տարբերվում: Մեծ Մ., բացի Մերկուրիից ու Վեներայից, ունեն բնական *արբանյակներ*: Մեծ Մ-ի երկրաչափական, մեխանիկական և ֆիզիկական բնութագրերը բերված են աղյուսակում:

Մ. պտտվում են նաև իրենց առանցքների շուրջը: Վեներայի և Յուպիտերի պտտման առանցքները գրեթե ուղղահայաց են իրենց ուղեծրերի հարթություններին, իսկ մյուս Մ-ի առանցքները զգալիորեն թեքված են համապատասխան ուղեծրային հարթությունների նկատմամբ: Այդ պատճառով տարվա եղանակների փոփոխություններ տեղի են ունենում միայն այդ Մ-ի վրա: Խիստ տարբեր է Մ-ի ֆիզիկական կառուցվածքը: Դրանցից ամենամեծերը (Յուպիտեր, Սատուրն) ունեն փոքր խտություն և բավական խիտ մթնոլորտ, միջին մեծության Մ. (Վեներա, Երկիր, Մարս)՝ պինդ մակերևույթ, շրջապատված գազային մթնոլորտով, իսկ Մեր-

Մեծ մոլորակների երկրաչափական, մեխանիկական և ֆիզիկական բնութագրեր

| Մոլորակ | Մոլորակի տրամագիծը (հասարակածում): *կմ*-երով | Մոլորակի տրամագիծը (հասարակածում): Երկրի տրամագծերով | Մոլորակի նվազագույն և առավելագույն անկյունային տրամագծերը (հասարակածում) աղեղնային *վրկ*-ներով | Մոլորակի սեղմվածությունը | Մոլորակի ծավալը Երկրի ծավալի միավորներով | Մոլորակի զանգվածը Երկրի զանգվածի միավորներով | Մոլորակի միջին խտությունը $գ/սմ^3$-ներով | Ազատ անկման արագացումը մակերևույթի վրա երկրայինի համեմատ | Հեռացման արագությունը մոլորակի մակերևույթի վրա *կմ/վրկ*-ներով | Արեգակի շուրջը մոլորակի պտտման պարբերությունը | Մոլորակի ուղեծրի էքսցենտրիսիտետը | Արբանյակների թիվը |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Մերկուրի | 4865 | 0,38 | 4,7—12,9 | 0,0 | 0,055 | 0,055 | 5,52 | 0,38 | 4,3 | 88 օր | 0,206 | 0 |
| Վեներա | 12105 | 0,95 | 9,9—65,2 | 0,0 | 0,861 | 0,815 | 5,22 | 0,90 | 10,3 | 224,7 » | 0,007 | 0 |
| Երկիր | 12756 | 1,00 | — | 1:298,2 | 1,000 | 1,000 | 5,517 | 1,00 | 11,2 | 365,3 » | 0,016 | 1 |
| Մարս | 6800 | 0,53 | 3,5—25,5 | 1:190 | 0,150 | 0,107 | 3,97 | 0,38 | 5,0 | 1,881 տարի | 0,093 | 2 |
| Յուպիտեր | 141700 | 11,11 | 30,5—50,1 | 1:15,3 | 1344,8 | 317,82 | 1,30 | 2,35 | 57,5 | 11,862 » | 0,043 | 16 |
| Սատուրն | 120200 | 9,41 | 14,7—20,7 | 1:10,2 | 770 | 95,28 | 0,68 | 0,92 | 37 | 29,458 » | 0,056 | 15 |
| Ուրան | 50700 | 3,98 | 3,4—4,3 | 1:33 | 61 | 14,56 | 1,32 | 0,92 | 22 | 84,015 » | 0,046 | 5 |
| Նեպտուն | 49500 | 3,88 | 2,2—2,4 | 1:60 | 57 | 17,28 | 1,84 | 1,15 | 23 | 164,79 » | 0,008 | 2 |
| Պլուտոն | 3000 | 0,24 | 0,5 | — | 0,01 | ~0,002 | 1 | 0,04 | 06 | 250,6* » | 0,253 | 1 |

(Ըստ 1980 թ. տվյալների)

* Փոփոխություններ է կրում ժամանակի ընթացքում:

կուրին և փոքր Մ. մթնոլորտից զուրկ պինդ մարմիններ են: Տես նաև *Արեգակնային համակարգ*, *Մթնոլորտ մոլորակների*:

*Գրկ.* Թումանյան Բ. Ե., Միրզոյան Լ. Վ., Աստղագիտություն, Ե., 1977:

*Բ. Թումանյան*

**ՄՈԼՉԱՆՈՎ** Պավել Ստեպանովիչ [ծն. 1(14).3.1902], բելոռուս սովետական դերասան: ՍՍՀՄ ժող. արտիստ (1949): ՍՄԿԿ անդամ 1945-ից: 1922—26-ին սովորել է Մոսկվայի Բելոռուսական դրամատիկական ստուդիայում: 1926—30-ին, 1936—51-ին (ընդհատումներով) աշխատել է Վիտեբսկի Բելոռուսական 2-րդ պետ. դրամատիկական թատրոնում (այժմ՝ Յա. Կոլասի անվ. թատրոն): 1951-ից աշխատում է Յա. Կուպալայի անվ. բելոռուսական թատրոնում (Մինսկ): Լավագույն դերերից են՝ Համլետ (Շեքսպիրի «Համլետ»), Սորին (Չեխովի «Ճայը»), Դոկտոր (Նազիմ Հիքմեթի «Բոլորից մոռացվածը»): Ստեղծել է Վ. Ի. Լենինի կերպարը Պոգոդինի «Հրացանավոր մարդը», Զորինի «Հավերժական աղբյուր» և այլ բեմադրություններում: Նկարահանվել է կինոյում: ՍՍՀՄ պետ. մրցանակ (1946):

**ՄՈԼՏԿԵ** Ավագ (Moltke) Հելմուտ Կարլ Բեռնհարդ (1800—1891), պրուսական և գերմանական ռազմական գործիչ, կոմս (1870), գեներալ-ֆելդմարշալ (1871), ռազմական տեսաբան: Ավարտել է Բեռլինի ռազմ. ակադեմիան (1826): Օ. *Բիսմարկի* աջակցությամբ ամրապնդել է պրուս. բանակը: 1858—88-ին եղել է Գլխավոր շտաբի պետ և փաստորեն գլխավոր հրամանատար Դանիայի (1864), Ավստրիայի (1866) և Ֆրանսիայի (1870—71) դեմ պատերազմներում: Իր երկերում առաջ է քաշել պատերազմների անխուսափելիության և նրանց «քաղաքակրթող» դերի, թշնամու վրա հանկարծակի հարձակվելու և շրջապատման միջոցով կայծակնային արագությամբ նրան ջախջախելու գաղափարը: Գերմ. միլիտարիզմի գաղափարախոսներից էր:

**ՄՈԼՈՒՅՑՔ**, մոլագարություն, մոլություն, 1. բուռն, անզուսպ ու անդիմադրելի ձգտում, ներքին մղում որևէ երևույթի նկատմամբ: Մ-ի հիվանդագին արտահայտություններից են թմրամոլությունը (տես *Նարկոմանիա*), *ալկոհոլամոլությունը*, պիրոմանիան (հրդեհ առաջացնելու անհաղթահարելի հիվանդագին հակում), կլեպտոմանիան (գողություն կատարելու հակում), դրոմոմանիան (թափառաշրջիկության հակում), սուիցիդոմանիան (ինքնասպանության փորձեր կատարելու հակում) ևն:

2. Ծայր աստիճանի, սաստիկ զայրույթ, որն ուղեկցվում է հոգեշարժական գրգռվածությամբ: Դրա արտահայտության ձևերից են՝ գրգռված մելանխոլիան (տես *Մանիակալ-դեպրեսիվ պսիխոզ*), խստաբանական աֆեկտը (հոգեկան տրավմայից հանկարծակի առաջացած գիտակցության խանգարման ֆոնի վրա ընթացող խիստ գրգռված վիճակ, կործանիչ-ավերիչ և ագրեսիվ գործողություններով) ևն:

**ՄՈԼՈՒՔՅԱՆ ԿՂԶԻՆԵՐ** (Moluccas, Maluku), Մալայան արշիպելագի արևելյան մասը Ինդոնեզիայում: Տարածությունը 83,7 հզ. *կմ²* է, բնակչությունը՝ մոտ 1 մլն (1971): Ձգվում են հս-ից հվ. 1300 *կմ*: Խոշոր կղզիներն են՝ Հալմահերա, Սերամ, Բուրու: Ունեն լեռնային մակերևույթ, բազմաթիվ հրաբուխներ (10-ը գործող): Առավելագույն բարձրությունը 3019 *մ* է (Բինայա լեռ, Սերամ կղզում): Հաճախակի են երկրաշարժերը: Կան անագի, ոսկու, նավթի հանքավայրեր: Կլիման հասարակածային է:

**ՄՈԽՐԱԲԵՐԴ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Վանի վիլայեթի Գյավաշ գավառում, Վանա լճի հարավ-արևելյան ափին, Ծոտաքար լեռան հարավային լանջին: 1915-ին ուներ 600 հայ բնակիչ (105 ընտանիք): Զբաղվում էին ձկնորսությամբ, երկրագործությամբ ու անասնապահությամբ: 1915-ին մոխրաբերդցիները հարևան Նոր գյուղի բնակիչների հետ մարտի են բռնվել թուրք. հրոսակների հետ: Մեկօրյա հերոսամարտն ավարտվել է մոխրաբերդցիների պարտությամբ: Մի քանի ամիս հետո փրկվածները նահանջող ռուս. զորքերի հետ գաղթել և բնակություն են հաստատել Արևելյան Հայաստանում:

**ՄՈԽՐԱԲԼՈՒՐ**, վաղ բրոնզեդարյան արհեստական բլուր-բնակատեղի, Էջմիածնից 4 *կմ* հարավ, Քասաղ գետի հին հունի ձախ ափին: Տարածքը՝ մոտ 3,5 *հա*: Բազմաշերտ հուշարձան է: Մշակութային շերտի առավելագույն հաստությունը շուրջ 10 *մ* է: Բացահայտվել են մեկը մյուսի վրա հիմնված 12 բնակավայրերի ավերակներ: Մ-ի հիմնական, ստորին, ավելի քան 8 *մ* խորությամբ շերտը ամփոփում է 9 բնակատեղի, հնագույնը՝ մ. թ. ա. IV հազարամյակի 2-րդ կես, իսկ վերինը՝ լքվել մ. թ. ա. III հազարամյակի կեսին: Մ-ում բնակությունը վերահաստատվել է վաղ երկաթի դարում (մ. թ. ա. II հազարամյակի վերջ, I-ի սկիզբ), նորից դադարել և կյանքի կոչվել միայն հելլենիստական դարաշրջանում: Հնագույն բնակատեղին բաղկացած է եղել կլոր հատակագծով, հում աղյուսից կառուցված ոչ մեծ կացարաններից: Մ. թ. ա. III հազարամյակի 1-ին կեսին այն կառուցապատվել է հաստ պատեր ունեցող խոշոր շինություններով և դրսից պարսպապատվել: Կենտրոնական հրապարակում կառուցվել է տաճարը, կենտրոնում՝ 4,5 *մ* բարձրությամբ, զագաթի մասում զոհասեղան ունեցող աշտարակով: Տաճարը մոնումենտալ ճարտարապետության ՍՍՀՄ տարածքում մինչև օրս հայտնի հնագույն կոթողն է:

Ռոզգելի երկրագործությունը եղել է

Մոխրաբլուրի տաճարական աշտարակի հարավային ճակատը






Մոխրաբլուր. *1.* կավե օջախ-զոհարանի մաս՝ մարդակերպ քանդակով, *2.* կավե եռոտանի պաշտամունքային հենակ, *3.* կավե հենակավոր սկահակ, *4.* ծանրաքար, *5.* կավե պաշտամունքային ցլակերպ քանդակ

Մ-ի բնակչության հիմնական զբաղմունքը: Բնակիչները Քասաղ գետի հունը հատել են երկար պատվարով՝ ստեղծելով հիդրոտեխնիկական բարդ կառույց: Արհեստների զարգացումը սերտորեն կապված է եղել բրոնզի մշակման հետ: Մ. թ. ա. III հազարամյակի 1-ին կեսով թվագրվող շերտերից հայտնաբերվել են հնոց-ձուլարան, հալոցներ, զենքեր ձուլելու քարե կաղապարներ, բրոնզե իրեր, կավանոթների հազարավոր նմուշներ: Դրանցից շատերը զարդարվել են բարդ հորինվածքներով: Պաշտամունքի զանազան իրերը (զոհարաններ, օջախներ, մզգակներ, արձանիկներ ևն), կերպարվեստի այլ առարկաներն ու տաճարի ճարտ. պատկերացում են տալիս բնակիչների հոգևոր կյանքի, պաշտամունքների վերաբերյալ: Պաշտվել են ցուլը, օջախը, ջուրը, երկինքը, քարը, արագիլը ևն: Մ. թ. ա. III հազարամյակի 2-րդ քառորդում Մ. երկրագործական դրացիական համայնքն էր՝ բաղկացած հիմնականում մեծ ընտանիքզերդաստաններից: Մ-ում 1970-ից պարբերաբար պեղումներ է կատարում Երևանի համալսարանի արշավախումբը:

*Գրկ.* Արեշյան Գ. Ե., Մոխրաբլուր բնակավայրի ստորին շերտերի բնութագրման շուրջ, տես Հայագիտական հետազոտություններ, պր. 1, Ե., 1974:

*Գ. Արեշյան*

**ՄՈԽՐԱԳՈՒՅՆ ՀՈՂԵՐ**, հողերի տիպ, ձևավորվել են մերձարևադարձային, կիսաանապատային բուսածածկի տակ: Կազմավորվում են լյոսերի, լյոսանման կավավազների և գիպս, կարբոնատներ, դյուրալույծ աղեր պարունակող հին ալյուվիալ նստվածքների վրա: Մ. հ-ի համար բնորոշ է հողառաջացնող պրոցեսի տարեկան ցիկլայնությունը՝ գարնանային

ակտիվ փուլում ինտենսիվորեն զարգանում է բուսականությունը (հողում աշնանն ու ձմռանը կուտակված խոնավության շնորհիվ), վերին հորիզոններում տեղի է ունենում բուսական մնացորդների կուտակում և հումիֆիկացում, կարբոնատների և հանքային աղերի մի մասի տեղաշարժ ներքին հորիզոնները. ամռան փուլում հումուսային նյութերը հանքայնանում են՝ դյուրալույծ աղերը մազանոթային խոնավության հետ բարձրանում են վերին հորիզոնները: Մ. հ-ի պրոֆիլն ունի հետևյալ կառուցվածքը. A՝ հումուսային հորիզոն (պարունակում է 1—4,5% հումուս, հզորությունը 40—120 *սմ* է, մոխրագույն կամ մոխրահարդագույն, վատ արտահայտված կնձկային կառուցվածքով), B՝ էլյուվիալ-կարբոնատ. հորիզոն, C՝ մայր ապար, դրանից ցած (1,5—2 *մ* խորության վրա)՝ դյուրալույծ աղերի կուտակումներ: Մ. հ. օժտված են ջրաֆիզիկական լավ հատկություններով, կենսբ. բարձր ակտիվությամբ, բավականաչափ բերրի են, ոռոգման դեպքում տալիս են բարձր բերք: Ստորաբաժանվում են ենթատիպերի՝ բաց, սովորական (տիպիկ), մուգ և հյուսիսային: Բաց և սովորական Մ. հ. օգտագործվում են ոռոգվող երկրագործությունում (բամբակենու, շաքարի ճակընդեղի, հացահատիկների ցանքերը, խաղողի և պտղատու այգիները): Տարածված են Առաջավոր Ասիայում, Հյուսիսային Ամերիկայում, Ավստրալիայում, ՍՍՀՄ-ում՝ Միջին Ասիայում: *Ի. Փարսադանյան*

**ՄՈԽՐԱԹԱՂ**, գյուղ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Մարտակերտի շրջանում, շրջկենտրոնից 6 *կմ* արևմուտք: Սովետական տնտեսությունն զբաղվում է այգեգործությամբ, հացահատիկային կուլտուրաների մշակությամբ, անասնապահությամբ, շերամապահությամբ, մեղվաբուծությամբ: Մ-ում պահպանվել են Ս. Աստվածածին (1883), Խաչ-Խուտատի (XIII դ.) և Ինն-Մասի Անապատ (1881) եկեղեցիները, Սահար օրիորդի մատուռը (1885), Մելիք-Իսրայելյանների պարսպապատ ապարանքի համալիրը (1771):

**ՄՈԽՐԱՀՈՂԵՐ**, տես *Մոխրագույն հողեր*:

**«ՄՈԾԱԿ»**, գրական-երգիծական պատկերազարդ շաբաթաթերթ: Լույս է տեսել 1906-ին, Թիֆլիսում, հայերեն, ռուսերեն, վրացերեն: Խմբագիր-հրատարակիչ՝ Վ. Դավիդյանց: Հիմնականում տպագրել է ծաղրանկարներ: Խարազանել է հայ ընտանիքներում տեղ գտած խորթ բարքերը, ծխականների ընտրության կարգը: Քննադատել է ցարական գրաքննությունը, Պետական դուման, այն դիտել «օրապակաս» և «անօգուտ» ձեռնարկ, ծաղրել ստոլիպինյան ռեֆորմները:

**ՄՈԾԱԿՆԵՐ** (Nematocera), երկարաբեղիկ երկթևանիներ, միջատների ենթակարգ: Տեսակների մեծամասնության մարմինն ու ոտքերը բարակ են և երկար: Սնվում են հիմնականում թրթուրային փուլում: Վերին ծնոտը գլխավորապես կրծող տիպի է: Թրթուրներն ապրում են ջրում, խոնավ հողում, բույսերի հյուսվածքներում, քայքայվող օրգ. նյութերում: Հարսնյակներն ազատ են, շարժուն, սովորաբար կեղծ բոժոժ չեն առաջացնում: Հասուն միջատները, առանձին բացառությամբ, օդային կյանք են վարում. սնվում են բույսերի հյութերով, նեկտարով, կենդանիների և մարդու արյունով, որոշ տեսակներ չեն սնվում: Հայտնի է Մ-ի ավելի քան 20000 տեսակ (35 ընտանիք): Տարածված են ամենուրեք: Մ. բաժանվում են մի շարք խմբերի, որոնք երբեմն ընդգրկում են մի քանի ընտանիքներ (օրինակ, սնկային մոծակներ, *մժեղներ*, *մլակներ*, *մժղուկներ*, երկարաոտիկներ են): Արյունածուծ Մ., մալարիայի, տուլարեմիայի, ճապոնական էնցեֆալիտի են, մլակները՝ պապատաչի տենդի, լեյշմանիոզների, մժեղների և մժղուկների բազմաթիվ տեսակներ՝ կենդանիների վարակիչ հիվանդությունների հարուցիչների փոխանցողներ և տարածողներ են:



Anopheles maculipennis մոծակը

Մ-ի մի շարք տեսակներ գյուղատնտ. բույսերի վնասատուներ են (հեսսենյան ճանճ, որոշ երկարաոտիկներ են): Որոշ Մ-ի ջրում ապրող թրթուրները ձկներին կեր են ծառայում: ՀՍՍՀ-ում տարածված Մ-ից առանձնապես վտանգավոր են Anopheles սեռի A. superpictus և A. maculipennis մալարիային Մ.: *Ա. Չուբկովա*

**«ՄՈԿԱՑ ՄԻՐԶԱ»**, հայ ժողովրդական միջնադարյան վիպական-քնարական երգ, բալլադ (ըստ Կոմիտասի՝ դյուցազներգ): Տարածված է եղել *Մոկսում*: Մեզ հասել է երգի չորս տարբերակ, բոլորն էլ՝ Մոկաց բարբառով: Գրի են առել և հրատարակել Արիստակես վարդապետ Սեդրակյանը, Գարեգին սարկավագ Հովսեփյանը, Սարգիս Հայկունին և Հայկ Աճեմյանը: Երգի բովանդակությունը հետևյալն է. Կոլոտ փաշան (տարբերակներից մեկում քուրդ է, մյուսում՝ հայ) իշխան Մոկաց Միրզային հրավիրում է Ջեզիրե քաղաքը և թունավորում՝ նրա հարսնացու Նազլուխանին տիրանալու համար: Մոկաց Միրզային թաղում են Մալաքավա քաղաքում: Հնարավոր է, որ երգի մեջ պահպանված է պատմական եղելություն. հանդիպում են մի շարք պատմական տեղավայրեր՝ Ջեզիրե, Մալաքավա, Զիզրաշեն են: Եղանակը, որ գրառել են նախ Կոմիտասը, ապա Ս. Մելիքյանը, ելևէջային տարրերով հարում է «Սասնա ծռեր» վիպերգի մեղեդիներին ու հին շարականներին, միաժամանակ ասերգային (պատմողական) և ծորերգային (քնարական) հատվածների հակադրումով, լաղով ու մեղեդիական ընդհանուր կառուցվածքով իր մեջ խտացնում է գուսանական վիպա-քնարական ու պատմական երգերի բնորոշ հատկանիշները: Երգիչն իր վերաբերմունքն է արտահայտում դեպքերի ու դեմքերի նկատմամբ, յուրաքանչյուր հատվածի վերջում հիշվում է. «Հազար ափսո՜ս Մոկաց Միրզեն», «Բեմուրադ կեներ Կոլոտ Խոջեն»: Պահպանվել է երգի ձայնապնակը՝ Կոմիտասի կատարմամբ: Հայ սովետական կոմպոզիտորների մի շարք երաժշտ. թեմաների համար դարձել է նախակերպար:

*Գրկ.* Սեդրակյան Ա., Քնար Մշեցվոց և Վանեցվոց, Վաղ-պատ, 1874: Հովսեփյան Գ., Փշրանքներ ժողովրդական բանահյուսությունից, Թ., 1892: Հայկունի Ս., Ժողովրդական երգ, առած, ասած... (տես «Էմինյան ազգագրական ժողովածու», հ. 6, Մ.—Վաղ-պատ, 1906, էջ 40—41): Աճեմյան Հ., Ծաղկաքաղ Վասպուրականի հայ ժողովրդական բանահյուսության, Էջմիածին, 1917: Կոմիտաս, Երկ. ժող., հ. 1, Ե., 1960: Աբեղյան Մ., Վիպական երգեր, Երկ., հ. 1, Ե., 1966:

*Ա. Նազինյան, Ռ. Աթայան*

**ՄՈԿՍ** (պատմական Որբ, այժմ՝ Մոկոսա), գետ Հայկական լեռնաշխարհում, Արևելյան Տիգրիսի աջ վտակը: Երկարությունը մոտ 52 *կմ* է: Սկիզբ է առնում Հայկական Տավրոսի համակարգի Ռշտունյաց լեռների հվ. լանջից, մոտ 3000 *մ* բարձրությունից: Հոսում է անտառապատ անդնդախոր ձորով, հս-արլ-ից հվ-արմ.: Սնումը ձնաանձրևային է, հորդացումը՝ մայիսին:

**ՄՈԿՍ**, բերդավան Արևմտյան Հայաստանում, Վանի վիլայեթի Մոկս գավառում: Մ-ի հայ բնակիչները զբաղվում էին հիմնականում շալագործությամբ և գզրարությամբ: Մ-ի յուրաքանչյուր թաղ ունեցել է իր եկեղեցին (չեն պահպանվել): Շրջակայքում կանգուն եկեղեցիներից է Անճողնց Ս. Աստվածածինը (XIII դ., վերանորոգվել է 1676-ին): Քարի և աղյուսի զուգակցումով կառուցված, քառանիստ խորանով թաղածածկ դահլիճ է: Աղոթասրահը մեկ զույգ որմնամույթերով և նրանց միջև ձգվող կամարով բաժանվում է երկու մասի, որոնք ծածկված են խաչվող թաղերով: Նման հորինվածք է ունեցել Դաշտ թաղի Ս. Հակոբ եկեղեցին (XIV դ.), որը ուշ միջնադարում եղել է գրչության նշանավոր կենտրոն: Մոկաց Ս. Խաչ վանքը (կոչվել է նաև Ս. Կանանց վանք) ըստ ավանդության հիմնել է *Հռիփսիմեն*: Հիշատակվում է X դարից, XIV—XVI դդ. այստեղ բազմաթիվ ձեռագրեր են գրվել: Վանքի Ս. Հովհաննես Մկրտիչ եկեղեցին (ըստ արձանագրության կառուցվել է 1408-ին) ուղղանկյուն, թաղածածկ դահլիճ է, արլ. կիսաշրջանաձև խոր աբսիդով, որի երկու կողմերում ավանդատներ են (դեպի դահլիճ նայող կամարակապ բացվածքներ ու վերևում թաքստոցներ ունեցող երկրորդ հարկերով): Եկեղեցուն արմ-ից կից է ուղղանկյուն, չորս խաչաձև մույթերով, սրբատաշ բազալտից կառուցված ժամատունը (XVII դ.): Ծածկի կենտրոնական հատվածը իրականացված է խաչվող, կողայինները՝ գլանաձև թաղերով: Մ-ից արլ. Առնջո ձորում, լեռան լանջին Մոկաց Ս. Ամենափրկիչ վանքն է: Հիշատակվում է XIII դարից, մինչև XVII դ. եղել է Վասպուրականի նշանավոր գրչ-

չության կենտրոններից: Գլխավոր՝ Ս. Աստվածածին եկեղեցին հիմնովին վերակառուցվել է 1570-ին, Հովսեփ ճարտարապետի ձեռքով: Այն ձգված համաչափություններով, միանավ թաղածածկ դահլիճ է, երեք զույգ որմնամույթերով և արլ. բավական խոր, ընդարձակ կիսաշրջանաձև խորանով: Կառուցված է քարից, ներսում օգտագործված է աղյուս: Եկեղեցուն արմ-ից կից է քառակուսի, չորս մույթերով, կենտրոնակազմ հորինվածքով գավիթը (XVII դ.), որի ծածկի միջին հատվածը պսակված է երդիկավոր գմբեթով, իսկ



Մոկսի Ս. Խաչ վանքի հատակագիծը

0 5մ

անկյունները՝ կիսազնդերով: Գավիթին հվ-ից կից է Ս. Հովհաննես Մկրտիչ եկեղեցին (1704), որը մեկ զույգ որմնամույթերով, միանավ թաղածածկ դահլիճ է՝ կառուցված սրբատաշ քարից, իսկ կամարները և թաղը՝ աղյուսից: XX դ. կիսականգուն վիճակում էր Մ-ի բերդը՝ կառուցված բարձր և անմատչելի ժայռի գագաթին: Մ-ի հայ բնակիչները տեղահանվել են 1915-ին: Նրանց մեծ մասը զոհվել է գաղթի ճանապարհին:

*Գրկ.* Լ ա լ ա յ ա ն Ե., Վասպուրականի նշանավոր վանքերը, պր. 1, Թ., 1912: T h i e r r y J. M., Monastères arméniens du Vaspurakan, «Revue des Etudes Arméniennes», t. VII, 1970.

*Մ. Հասրաթյան*

**ՄՈԿՍԻ ԲԱՐԲԱՌ,** հայերենի բարբառ: Ըստ ձևաբանական դասակարգման պատկանում է «կը» ճյուղին, ըստ բազմահատկանիշ վիճակագրական դասակարգման՝ Վանի կամ հվ. միջբարբառախմբին: Ունի մի քանի խոսվածքներ: Խոսվել է պատմական Հայաստանի Մոկաց աշխարհում:

Մոկսի տարածքում գրաբարի ձայնեղ պայթականներն ու կիսաշփականները բառասկզբում խլանում են. **բարի>պա̈րի, ձայն>ծէն**: Հ-ի դիմաց առկա է խ. **հոգի>>խուկ$^{j}$ի**: Ետնալեզվային բաղաձայններն ունեն քմային տարբերակներ. **քար>ք$^{j}$ար, գարի>կ$^{j}$ա̈րը, քո>ք$^{j}$ու∼չը** (Ծափանց գյուղ), **գնալ>կ$^{j}$ընա̈լ∼չինա̈լ** (Լըճան գյուղ): **Ա** խլացած ձայնեղ պայթականներից ու կիսաշփականներից հետո արտասանվում է **ա̈**. **բակ>պա̈կ, դար>>տա̈ր**, խուլ պայթականներից ու կիսաշփականներից հետո՝ **ա̊** (առանձին գյուղերում՝ գրեթե օ). **կաթ>կա̊թ∼կօթ**: **Ա̈** և **ա̊** իմաստազատիչ դեր ունեն. **տա̊տ—տա̈տ, տա̈տ—դատ**: Գրաբարի **ե, ո** մեծ մասամբ արտասանվում են **ի, ու** (**ու̈, ու̊**). **ասեղն>ա̊սիղ, ալոջ>ա̊լու̈չ, հոգի>խուկ$^{j}$ի, չորս>չուրս** (չու̊րս): Քաղաքի խոսվածքում, բազմավանկ բառերի բաց վանկում **ի** արտասանվում է **ը** (**ը$^{է}$**)՝ **ջորի>ճու̈րը** (**ճուրը$^{է}$**), մյուս դիրքերում մնում է անփոփոխ: **Ու** մնում է անփոփոխ կամ դառնում է **ու̈, օ, օ̈. տուն>տու̈ն, խուրձ-խօրց** (խուրց), **դուռն>տօ̈ռ** [գյուղերի մեծ մասում և՛ **ի**, և՛ **ու** երկբարբառանում են՝ **ինն>է$^{h}$ն** (**ա̈$^{h}$ն, ա̈$^{j}$ն**), **շապիկ>>շա̊պէ$^{h}$ք$^{j}$** (**շա̊պա̈$^{h}$ք$^{j}$, շա̊պա̈$^{j}$ք**), **տուն>>տօ$^{ու}$ն** (**տա̊$^{ու}$ն**), **պուտուկ>պա̈$^{ու}$-տա̈$^{ու}$կ**]: Շեշտը վերջնավանկային է:

Ունի անվանական 5 հոլովաձև (հայցականը, որոշյալ առման դեպքում, **զ** նախդրով): Ներգոյականի հոլովաձևը բացակայում է: Բացառականը կազմվում է **է** կամ **ից∼է$^{h}$ց** մասնիկով. անձի առման դեպքում առկա է նաև վերլուծական ձև՝ սեռական հոլովի և **մօտէն** կապի համադրությամբ: Գոյականի հոգնակին կազմվում է **իր, ք$^{j}$, ք$^{j}$իր, տիր, ք$^{j}$տիր, նիր, ա̊նք** (**ա̈նք$^{j}$**), **վա̊նք$^{j}$** (**վա̈նք$^{j}$**) մասնիկներով: Հոգնակի թվի հոլովիչն է **ու**: **Ք$^{j}$, ա̊նք$^{j}$, վա̊նք$^{j}$** հոգնակերտ ունեցող բառերը թեք հոլովներում ստանում են լրացուցիչ **տիր** հոգնակերտ՝ **ա̊փնիք$^{j}$-ա̈փնըք$^{j}$տիրու**: Քանակական բարդ թվականների կազմության մեջ կիրառվում է **ք$^{j}$սա̊ն** (< քսան) բաղադրիչը, որ հաճախ զուգակցվում է **տա̊ս** բաղադրիչի հետ. **ք$^{j}$սան տա̊ս-երեսուն**:

Բայի խոնարհիչներն են՝ **ի, ա̊** (ա̈). **նըստիմ, խա̊ղա̊մ, կյա̈մ** (< գամ): Ունի չորս եղանակ՝ սահմանական, ըղձական, հարկադրական, հրամայական: Սահմանականի ներկան և անկատարը կազմվում են **կը** (կ) եղանակիչով, ըստ որում անկատարի եզակի թվում դիմային վերջավորությունները նույնանում են (առանձին վայրերում կան բացառություններ): Վաղակատար ժամանակաձևում դերբայն ստանում է **իր** մասնիկ. **նըստիր իմ**: Անցյալ կատարյալի եզակի երրորդ դեմքում մի քանի բայեր պահում են գրաբարի **ե** (> է,>ի) նախահավելվածը: Հարկադրական եղանակի բայաձևերը կազմվում են ըղձականի և **տը**(տ) նախամասնիկի համադրությամբ՝ **ուտիմ∼օ$^{ու}$տիմ-տուտիմ∼տօ$^{ու}$տիմ**: Ժխտական խոնարհման մի շարք բայաձևերում շեշտվում է ոչ թե ժըխտական մասնիկը, այլ խոնարհվող բայի առաջին վանկը. **չըմո՛ւտը ∼ չըմօ՛$^{ու}$տը**: (արգելական հրամայականում՝ մըտը՛փըմի՛ ծեծիր):

*Գրկ.* Ա ճ ա ռ յ ա ն Հ., Հայ բարբառագիտություն, Մ.—Նոր Նախիջևան, 1911 (Էմինյան ազգագրական ժողովածու, հ. 8): Մ ու ր ա դ յ ա ն Մ., Մոկսի բարբառի հնչյունա-հնչույթային համակարգի հիմնական առանձնահատկությունները, «ԼՀԳ», Ե., 1978, № 9:

*Մ. Մուրադյան*

**ՄՈԿՐԱՆՅԱՑ** (Мокрањац) Ստեվան [իսկական ազգանունը՝ Ս տ ո յ ա ն ո վ ի չ (Стојановић), 1856—1914], սերբ կոմպոզիտոր, բանահավաք, դիրիժոր, մանկավարժ: Սովորել է Բելգրադում, Մյունխենում, կատարելագործվել Հռոմի «Սանտա-Չեչիլիա» ակադեմիայի կոնսերվատորիայում, Լայպցիգում: 1887-ից ղեկավարել է Բելգրադի երգչախմբային ընկերությունը: 1899-ին Բելգրադում հիմնել է երաժշտ. դպրոց (այժմ՝ Ս. Մոկրանյացի անվ.): Որպես կոմպոզիտոր ճանաչվել է 15 «Ռուկովետներ»-ով, որոնցում ստեղծել է խմբերգային գրության ազգային ինքնատիպ ոճ:

**ՄՈԿՈՒԼՍԿԻ** Ստեֆան Ստեֆանովիչ [26.7(7.8).1896, Թիֆլիս —25.1.1960, Մոսկվա], սովետական թատերագետ և գրականագետ: Բանասիրական գիտ. դ-ր (1937): ՍՄԿԿ անդամ 1940-ից: 1918-ին ավարտել է Կիևի համալսարանի բանասիրական ֆակուլտետը: 1923—42-ին դասավանդել է Լենինգրադի համալսարանում (1937-ից՝ պրոֆեսոր), Գերցենի անվ. մանկավարժական ինստ-ում, 1943-ից՝ Մոսկվայի Թատերարվեստի պետ. ինստ-ում (1943—48-ին՝ դիրեկտոր), ղեկավարել ՍՍՀՄ ԳԱ արվեստի պատմության ինստ-ի թատրոնի պատմության և տեսության սեկտորը, եղել «Թատերական հանրագիտարանի» (հ. 1, 1961) գլխավոր խմբագիրը: Մ-ի գիտական հետաքրքրությունները հիմնականում կապված են եղել Վերածննդի և Լուսավորության շրջանների իտալ. և ֆրանս. արվեստին: Հեղինակ է «Արևմտաեվրոպական թատրոնի պատմություն» (1936—39) երկհատորյակ գրքի: Կազմել է նաև արևմտաեվրոպական թատրոնի մասին երկհատորյակ «Քրեստոմատիա»-ն (1937—39, 2-րդ հրտ., հ. 1—2, 1953—55) ևն:

**ՄՈԿՈՒՆՔ,** գյուղ Արևմտյան Հայաստանում, Բիթլիսի վիլայեթի Մուշ գավառում: 1909-ին ուներ 50 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ:

Մ-ի հայերը բռնությամբ տեղահանվել են 1915-ին, Մեծ եղեռնի ժամանակ: Նրանց մեծ մասը զոհվել է աքսորի ճանապարհին:

**ՄՈԿՔ,** Մ ո կ ս, Մ ո ք ս, Մ ո կ ա ց ա շ խ ա ր հ (աքքադ. Mât Muški, լատ. Moxoene, Moxoena, ասոր. Bēt Moksāye), նահանգ («աշխարհ») *Մեծ Հայքում* համանուն կենտրոնով: Ենթադրվում է, որ «Մոկք»անունը ծագում է Հին Հայաստանի «Մոկսիաներ» ցեղանունից: Տարածվում էր Հայկ. Տավրոսի արլ. լեռնաճյուղի շարունակությունը կազմող Մոկաց լեռներում՝ Ջերմ (Բոհտանսու) գետի և նրա վտակներ Տատիկի, Կեցանի (Քեսան) և Մոկսի (Մուկուս) ձորահովիտներում: Հս-ից և արլ-ից սահմանակցում էր Վասպուրականին, արմ-ից՝ Աղձնիքին, հվ-ից՝ Կորճայքին: VII դ. «Աշխարհացոյց»-ի համաձայն, Մ. ուներ հետևյալ գավառները. Իշայր, Միջս Իշայր, Իշոց, Առվենից ձոր, Միջա, Մոկք Առանձնակ, Արգաստովիտ և Ջերմաձոր:




Մ. ունի անտառածածկ լեռներ, հարուստ բուսական ու կենդանական աշխարհ, սառնորակ ջրեր, հանածո հարստություններ (հատկապես երկաթահանքեր): Մ-ով ձգվող տարբեր լեռնաճյուղավորումները նրա տարածքը բաժանում են արգավանդ հովիտների, որոնք նպաստավոր են երկրագործության և անասնապահության համար: Մ. թ. ա. IX դարից Մ-ի տարածքն ընդգրկվել է Ուրարտու պետության, մ. թ. ա. VI դ. սկզբից՝ Երվանդունիների թագավորության կազմի մեջ: Մովսես Խորենացու հավաստմամբ, Հայոց ավանդական թագավոր *Վաղարշակը* Մ-ում հաստատել է առանձին նախարարություն: Որպես Հայաստանի հվ. նահանգ, հնուց ի վեր Մ. ունեցել է պաշտպանական կարևոր նշանակություն, իսկ նրա նախարարները՝ ազդեցիկ դեր: Ագաթանգեղոսը Մ-ի նախարարին հիշում է Հայոց մեծ իշխանների շարքում: *Գահնամակում* Մ-ի նախարարությանը հատկացվել է 5-րդ տեղը, իսկ ըստ *Զորանամակի*, նրա զորաբաժինը կազմվել է 1000 հեծյալից: IV դարից Մ-ում հաստատվել է առանձին եպիսկոպոսություն: Մ-ի նախարարությունը կարևոր դեր է խաղացել V դ. ժողովրդա-ազատագրական պատերազմներում: Ավարայրի ճակատամարտում (451) Մ-ի մեծ իշխանը եղել է Հայոց առաջին զորագնդի հրամանատարի օգնական: Հայոց Արշակունի թագավորության անկումից (428) հետո, մարզպանության շրջանում, և Արաբական խալիֆայության տիրապետության պայմաններում Մ-ի իշխանները պահպանել են իրենց ինքնուրույնությունը: VIII դ. սկզբին Բագրատունիների մի ճյուղը հաստատվել է Մ-ում: IX դ. կեսին Հայաստանում մեծ ազդեցություն ուներ Մ-ի իշխան Սմբատ Բագրատունին, որին Թովմա Արծրունին անվանում է «քաջահայտ և բարձրագահ» իշխան: Այնուհետև Մ-ի տեր է հիշվում Մուշեղը, որն սպանվեց Անձևացյաց իշխան Գուրգենի (Ապուպելճի որդու) հետ ունեցած ընդհարման ժամանակ: IX դ. 2-րդ կեսին Մ. ենթարկվել է Վասպուրականի Արծրունյաց իշխաններին (արաբ մատենագիրներ Բելազուրին, Յակուտը Մ. հիշում են որպես Վասպուրականի մաս): Բագրատունիների թագավորության ստեղծումից (885) հետո Մ-ի իշխանները սերտորեն գործակցել են Հայոց թագավորին: 902-ին Հայաստանում արաբ. կայսիկ ցեղի դեմ Սմբատ Ա-ի մղած պատերազմում վճռական դեր է խաղացել նաև Մ-ի զորագունդը: 904-ից հետո Մ-ի իշխանները (բացառությամբ նրա Ջերմաձոր գավառի տերերի) հրաժարվել են Վասպուրականի Արծրունիների գերիշխանությունը ճանաչելուց: Կոստանդին Ծիրանածինը բյուզանդ. արքունիքի հետ X դ. սկզբին դիվանագիտական նամակագրություն ունեցող հայկ. իշխանների շարքում հիշատակում է նաև Մ-ի իշխանին: Մոտ 907-ին Մ. կրկին միավորվում է Վասպուրականին: Այնուհետև Մ-ում հաստատվում է Արծրունիների մի տոհմաճյուղը: X դ. 2-րդ կեսին Բյուզանդիան ջանում էր իր ազդեցության տակ գցել Մ., որպեսզի դյուրացնի Վասպուրականի նվաճումը: Ստեփանոս Տարոնեցու (Ասողիկ) վկայությամբ, Մ-ի իշխան Ջափրանիկը բյուզանդ. զորապետ էր (սակայն 977-ին հարեց Վասիլ II Կայսեր դեմ Վարդ Սկլերոսի ապստամբությանը):

Վասպուրականի թագավորության անկումից և ազատանու արտագաղթից (1021) հետո թեև Մ. միացվեց Բյուզանդիային, սակայն այնտեղ Արծրունիները շարունակում էին ճանաչել Վասպուրականում մնացած Արծրունիների շառավիղներ *Խեղենեկյանների* գերակայությունը: XII դ. 2-րդ կեսին Մ-ում «Մեծ իշխան» է հիշվում Հմայակ Արծրունին, որի դուստր Մելեքսեթին կնության առավ Սասունի Թոռնիկյան իշխան Վիգենը (Չորտվանելի որդին): Այդ ժամանակաշրջանում Մ-ի Արծրունիները դաշնակցում էին Սասունի Թոռնիկյաններին: XIII դարից Մ. են թափանցում քրդական վաչկատուն ցեղեր: XVI դ. սկզբից Մ-ի տարածքը բռնատիրել է օսմանյան Թուրքիան: Վերջինիս կազմում այն մտնում էր Վանի էյալեթի մեջ, որպես առանձին սանջակ՝ Մոկս անունով: Սանջակի կենտրոնն էր *Մոկս* բերդավանը: XVI—XIX դդ. Մ-ում շարունակում էին գոյատևել հայկ. կիսանկախ համայնքները՝ հայ մելիքների գլխավորությամբ: Մ. կազմում էր Աղթամարի կաթողիկոսության եկեղեցաթեմերից մեկը: Այնտեղ ժառանգական հողատերեր էին հայերը, մասամբ՝ քրդերը: Մ-ում զարգացած էր խաղողամշակությունը, բամբակագործությունը, ձիթատու բույսերի մշակությունը, մեղվաբուծությունը: Արհեստներից հատկապես զարգացած էին շալագործությունը և գզրարությունը, մասամբ՝ մետաղամշակությունը: XX դ. սկզբին Մ-ի մետաղահատները երկաթի հանքաքարը հալում էին գետնի մեջ փորված հալոցարաններում և ապա տնայնագործական եղանակով պատրաստում երկրագործական գործիքներ, զանազան իրեր ևն: Մ-ի 49 բնակավայրերի հայ բնակչությունը (ավելի քան 900 ընտանիք) 1915-ին տեղահանվեց և հիմնականում զոհ գնաց բռնագաղթի ճանապարհին: Փրկվածները մեծ մասամբ անցան Արևելյան Հայաստան և բնակություն հաստատեցին Թալինի, Աշտարակի շրջաններում, Սևանի ավազանում և այլուր:

1909-ի տվյալներով, Մ-ում եղել են հետևյալ հայաբնակ բնակավայրերը. Աբրխամենց, Անապատ, Անճղոց թաղ, Ատիճանց, Բառ, Բյուրանդ, Բրտնուտ, Բուլենց, Գիդրիս, Գնեկանց, Գոմանս, Գոմեր, Դաշտի, Դեմկառ, Թառամաղ, Լճան, Լուլենց, Խալենց, Խացաբլուր, Խրեր, Ծառստանց, Ծափանց, Կայթանց, Կասր, Կարճկանց, Կճավ, Կտոր, Հադլվան, Հադին, Հաղմդունս, Հառինջ, Հառնանց, Հասկնջավ, Հավարիս, Հեր, Մակնի, Մարականց, Մոկս, Նանենց, Նորովանց, Շեն, Սաքս, Սեպ, Սորս, Սպրկանց, Վանքիկ, Տմիս, Փետատեղ, Քաղաքի:

*Գրկ.* Ինճիճյան Ղ., Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի. մաս 1, Ասիա, հ. 1, Վնտ., 1806: Սրվանձտյանց Գ., Թորոս աղբար, հ. 2, ԿՊ, 1884, էջ 309—310: Հյուբշման Հ., Հին Հայոց տեղվո անունները, Վնն., 1907: Երեմյան Ս. Տ., Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, Ե., 1963: Հակոբյան Թ. Խ., Հայաստանի պատմական աշխարհագրություն, Ե., 1968: Адонц Н., Армения в эпоху Юстиниана, СПБ, 1908: Markwart J., Südarmenien und die Tigrisquellen, nach griechischen und arabischen Geographen, Wien, 1930; Thierry J. M., Monastères arméniens du Vaspurakan, «Revue des Etudes Arméniennes», t. VII, 1970, 73—74.

*Վ. Վարդանյան*

**ՄՈԿՔ ԱՌԱՆՁՆԱԿ**, Առանձնակ Մոկք, Արքայից գավառ, Մեծ Հայքի *Մոկք* նահանգի գավառներից մեկը: Ենթադրվում է, որ եղել է Մոկաց նախարարական տան ոստանը և ըստ այդմ կոչվել «Արքայից», «Արքունական»: Կենտրոնն էր Մոկս ավանը, որի մոտակայքում էր Ս. Ամենափրկիչ վանքը:

**ՄՈՀԱՄՄԱԴ ՌԵԶԱ ՓԱՀԼԱՎԻ** (1919—1980), Իրանի շահ 1941—79-ին: Փահլավիների դինաստիայից: Հոր՝ *Ռեզա շահ Փահլավիի* հրաժարականից հետո հռչակվել է Իրանի շահ: Վարել է ծայրահեղ ռեակցիոն, հակաժողովրդ. քաղաքականություն, երկրի ներսում հաստատել տեռորիստական վարչաձևկարգ, կազմակերպել դաժան հալածանքներ աշխատավոր մասսաների դեմ, ճնշել դեմոկրատական, ազատագրական, հակաիմպերիալիստական ելույթները, կողոպտել ազգային հարստությունները: Արտաքին հարաբերությունների բնագավառում կողմնորոշվել է դեպի արևմտաիմպերիալիստական տերությունները, մասնավորապես՝ ԱՄՆ-ը: 1955-ին հաստատել է Բաղդադի պակտին (ՍԵՆՏՕ) Իրանի միացման մասին օրենքը: 1979-ի հունվարին, իրանական հեղափոխության ժամանակ, վտարվել է երկրից:

**ՄՈՀԵՆՋՈ-ԴԱՐՈ** (սինդհի լեզվով՝ մեռելների բլուր), *Խարապպայի քաղաքակրթության* գլխավոր կենտրոններից մեկի

ավերակները: Հայտնաբերել է հնդիկ հնագետ Ռ. Բաներջին, 1922-ին: Մ-դ-ի ուսումնասիրությունները հնարավորություն տվեցին որոշելու Խարապպայի քաղաքակրթության հիմնական փուլերն ու բնորոշ գծերը:

**ՄՈՀԻԿԱՆՆԵՐ**, հնդկացի ցեղ Հյուսիսային Ամերիկայում: Մինչև գաղութացումը Մ. (մոտ 3 հզ. մարդ) բնակվել են Հուդզոն գետի հովտում, զբաղվել հողագործությամբ, որսորդությամբ և հավաքչությամբ: XVII դ. սկզբից ներգրավվել են մորթու առևտրի մեջ, որը և հանգեցրել է տոհմային կարգերի քայքայման: Գաղութացման և *իրոկեզների* հարձակումների հետևանքով Մ-ի մեծ մասը ոչնչացվեց: Մնացածը (մոտ 300 մարդ) վերաբնակեցվեցին Վիսկոնսին նահանգի Սթոքբրիջ ռեզերվացիայում: Խոսում են անգլ.: Քրիստոնյաներ են:

**ՄՈՀՈՐՈՎԻՉԻՉԻ ՄԱԿԵՐԵՎՈՒՅԹ**, բաժանման սահման *երկրակեղևի* և *Երկրի մանթիայի* միջև: Մ. մ. հայտնաբերվել է ըստ սեյսմիկական տվյալների. երկայնակի սեյսմիկական ալիքների արագությունը Մ. մ-ի միջով անցնելու (վերևից ներքև) դեպքում աճում է թռիչքաձև 6,7—7,6-ից մինչև 7,9—8,2 *կմ/վրկ*, իսկ լայնակի ալիքներինը՝ 3,6—4,2-ից մինչև 4,4—4,7 *կմ/վրկ*: Զանազան երկրաֆիզիկական, երկրաբանական և այլ տվյալներ ցույց են տալիս, որ նյութի խտությունը նույնպես աճում է թռիչքաձև, ենթադրաբար, 2,9—3-ից մինչև 3,1—3,5 *տ/մ³*: Միանգամայն հավանական է, որ Մ. մ. բաժանում է տարբեր քիմ. բաղադրությամբ շերտեր: Մ. մ. իր անվանումն ստացել է ի պատիվ հայտնաբերողի՝ հարավսլավացի երկրաֆիզիկոս և սեյսմոլոգ Ա. Մոհորովիչիչի (1857—1936): Տես նաև *Երկիր*:

**ՄՈՂԵՍ** (լատ. Lacerta), համաստեղություն երկնքի հյուսիսային կիսագնդում՝ Ցեֆեոս, Կարապ, Պեգաս, Անդրոմեդա, Կասիոպեա համաստեղությունների միջև: ՀՍՍՀ տարածքից երևում է ամբողջ տարին:

**ՄՈՂԵՍՆԵՐ** (Lauria), թեփուկավորների կարգի սողունների ենթակարգ: Մարմնի երկարությունը 3,5 *սմ*-ից մինչև 3 *մ* է, պատված եղջերային թեփուկներով կամ վահանիկներով: Վերջիններիս դասավորությունն ու ձևն ունեն կարգաբանական նշանակություն: Իրանը սեղմված է կողքերից, վերևից կամ գլանաձև է: Մեծ մասն ունի 2 զույգ լավ զարգացած, հնգամատ վերջավորություններ: Որոշ տեսակների մոտ դրանք բացակայում են և մարմինը նմանվում է օձի: Կոպերը սովորաբար շարժուն են, առանձին Մ-ի մոտ ձուլվել են և վերածվել թափանցիկ թաղանթի կամ ծածկված են մաշկի տակ: Ատամներն ամրացած են ծնոտների ներսի (պլևրոդոնտ) կամ արտաքին եզրին (ակրոդոնտ): Պլևրոդոնտ ատամները ջարդվելուց կամ մաշվելուց փոխարինվում են նորերով, իսկ ակրոդոնտները՝ ոչ: Մ-ի պոչը, որպես կանոն, աստիճանաբար նեղանում է և վերջանում սուր ծայրով, հաճախ գերազանցելով մարմնի երկարությանը: Երբեմն վերջանում է բութ, կողքերից տափակացած, հարթ կամ ոլորված ձևով: Վտանգի դեպքում, մկանների կծկման հետևանքով, հաճախ պոչը կտրվում է (ողի մեջտեղի կռճիկային մասից), հետագայում աճում է նորը: Լեզուն կարող է լինել լայն, երկար, երկճյուղ ևն: Լավ զարգացած են տեսողությունը, լսողությունը: Շատ տեսակներ ունեն երրորդ կամ գագաթային աչք: Գունավորումը բազմազան է. անապատում ապրողներն ունեն բաց գունավորում, ծառաբնակները՝ կանաչ: Շատերը կարողանում են փոխել գույնը և հարմարվել միջավայրին: Մեծ մասը ցամաքային կյանք է վարում, որոշ տեսակներ ծառաբնակ են, մի քանիսն ապրում են ավազի, հողի մեջ: Սնվում են հիմնականում միջատներով ու նրանց թրթուրներով, որդերով, փափկամորթներով, ավելի խոշորները՝ մանր ողնաշարավորներով: Կան և բուսակեր տեսակներ: Բազմանում են առավելապես ձվադրությամբ (դնում են 1—35 ձու): Կան նաև ձվակենդանածնությամբ, կենդանածնությամբ և կուսածնությամբ բազմացողներ: Ապրում են 1—3-ից մինչև 50—80 տարի: Հայտնի է 3500 (ՍՍՀՄ-ում՝ 77, ՀՍՍՀ-ում՝ 24) տեսակ, տարածված ամենուրեք, բացառությամբ ցուրտ գոտիների: Մ. օգտակար են, ոչնչացնում են գյուղատնտ. վնասատու միջատներին: Որոշ երկրներում տեղական բնակչությունն օգտագործում է խոշոր Մ-ի միսը, մաշկը: *Ֆ. Դանիելյան*

Պատկերազարդումը տես 609-րդ էջից առաջ՝ ներդիրում:

**«ՄՈՂՆՈՒ ԱՎԵՏԱՐԱՆ»**, XI դարի հայկական մագաղաթյա ձեռագիր Ավետարան: «Մ. Ա.» է կոչվում հարյուր տարի (1822—1922) Թիֆլիսի Մողնու Ս. Գևորգ եկեղեցում գտնվելու համար: Մինչ այդ, մի քանի հարյուր տարի, Հաղպատում էր, որի պատճառով համարվում էր այնտեղ գրված և նկարազարդված: Այժմ պահպանվում է Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվ. Մատենադարանում (ձեռ. № 7736): Հայ ձեռագրական մշակույթի գլուխգործոցներից է, 42 *սմ*×32,5 *սմ* մեծությամբ 380 բարձրորակ մագաղաթյա թերթերի վրա երկաթագրով գրված և բազմերանգ նկարազարդված: Գրիչն ու նկարիչը Մարիամի և Դավթի որդի *Հովհաննես Սանդղկավանեցին* է, որի արվեստանոցը գտնվում էր Արշարունյաց գավառի Կաղզվան քաղաքին մոտ՝ Սանդղկավանքում: «Մ. Ա.» գրվել և նկարազարդվել է, ամենայն հավանականությամբ, մինչև 1060-ը: Մինչ այդ մեզ հայտնի ամենահարուստ նկարազարդված ձեռագրերից է: Բազմերանգ են 10 խորանները և 12 տերունական նկարները, ինչպես նաև չորս ավետարանիչներն ու ավետարանառաջները, որոնք գտնվում են յուրաքանչյուր Ավետարանի սկզբում: Այս ձեռագրում առաջին անգամ հանդիպում ենք *գլխապարդերի* և զարդագրերի: Հովհաննես Սանդղկավանեցու 1053-ի ձեռագրի հիշատակագրություններում պահպանվել են ներկեր, մագաղաթ պատրաստողների և այլ արհեստավորների անուններ, որոնք ցույց են տալիս, որ Սանդղկավանքում եղել է գրչության և մանրանկարչության խոշոր արվեստանոց, ուր նկարազարդվել են բազմաթիվ ձեռագրեր: Դրանցից մեզ հասածները, ըստ Լ. *Դուռնովոյի*, «ցույց են տալիս, որ նրանք սկիզբ են առնում մի մեծ, «ակադեմիական» կարգի արվեստանոցից, որտեղ ստեղծվել են ամենաբազմազան նշանակալից գործեր՝ իրենց տարբերակներով, և որ այդ աշխատանքներին իրենց մասնակցությունն են բերել վարպետ նկարիչներ»:

Պատկերազարդումը տես 673-րդ էջից առաջ՝ ներդիրում:

*Գրկ.* Դուռնովո Լ., Հայկական մանրանկարչություն, Ե., 1967: Մաթևոսյան Ա., Գրիչ Հովհաննես Սանդղկավանեցի («Մողնու Ավետարանը»), «ԲՄ», № 10, 1971: Измайлова Т., Армянская миниатюра XI века, М., 1979. *Ա. Մաթևոսյան*

**ՄՈՂՈՔ** (հուն. μολόχ, եբր. Molek — թագավոր), արևմտա-սեմական ցեղերի աստվածություն (Աստվածաշնչում հիշվում է որպես ամմոնացիների աստված), որին զոհաբերել են մեծամասամբ մանկահասակ երեխաներ: Որոշ ուսումնասիրողների կարծիքով, Մ. ոչ թե աստվածության անունն է, այլ հենց զոհաբերվող մանուկների հրակիզման ծիսակատարությունը, որի մանրամասնությունները գրեթե անհայտ են: Մ-ի պաշտամունքը հետագայում հատկապես տարածված է եղել (փյունիկեցիների միջոցով) Կարթագենում, որի մասին են վկայում հրակիզված մանուկների աճյուններն ու բազմաթիվ դամբանագրերը: Ծեսի իմաստն ու նշանակությունը տակավին մնում են չպարզաբանված: Փոխաբերական առումով Մ. նշանակում է սարսափելի ու անհագուրդ ուժ, որն անընդհատ պահանջում է մարդկային անմեղ զոհաբերություններ:

**ՄՈՃՈՒՅԱՆ** Մարիամ Պետրոսի [6(19).7.1904, Ալեքսանդրապոլ—12.10.1972, Թբիլիսի], հայ սովետական դերասանուհի: Վրաց. ՍՍՀ ժող. արտիստուհի (1958): Բեմ է բարձրացել 1920-ին՝ Հ. Զարիֆյանի խմբում, ապա խաղացել Վ. Միրզոյանի, Ա. Արմենյանի, Հ. Աբելյանի, Վ. Փափազյանի խմբերում: 1928-ից աշխատել է Թբիլիսիի հայկ. թատրոնում, եղել առաջատար դերասանուհիներից: Լավագույն դերերից են՝ Մարգարիտ, Սուսան, Սոնա (Շիրվանզադեի «Պատվի համար», «Նամուս», «Չար ոգի»), Էֆեմիա (Սունդուկյանի «Պեպո»), Անուշ (Պարոնյանի «Պաղտասար աղբար»), Զեյնաբ (Յուժին-Սումբատովի «Դավաճանություն»), Կրուչինինա (Ա. Օստրովսկու «Անմեղ մեղավորներ»), Դեզդեմոնա, Օֆելյա (Շեքսպիրի «Օթելլո», «Համլետ»): *Բ. Հովակիմյան*

**ՄՈՄ**, *լույսի ուժի* միավոր: Գործածվել է 1948-ից, *միջազգային մոմի* փոխարեն, և մինչև 1967-ը եղել է *Միավորների միջազգային համակարգի* յոթ հիմնական միավորներից մեկը: 1967-ին, Չափերին ու կշիռներին նվիրված XIII գլխավոր կոնֆերանսի ընդունած որոշման համաձայն, փոխարինվել է *կանդելա* միավորով:

**ՄՈՄԱԹՈՒՂԹ**, մեղրամոմով, պարաֆինով և վազելինի յուղով ներծծված բարակ թուղթ: Օգտագործվում է տրաֆարետային տպագրության տպաձև պատրաստելու համար: Մ. խիստ զգայուն է ջերմության և մեխանիկական ներգործության նկատմամբ:

**ՄՈՄԱՆԿԱՐՉՈՒԹՅՈՒՆ**, գեղանկարչական տեխնիկայի տեսակ, որտեղ իբրև ներկերը կապակցող նյութ ծառայում է

մոմը (տես *Մումանյութեր*): Շնորհիվ նրա քիմ. փոքր ակտիվությանը Մ-ով կատարված ստեղծագործությունները դարերով պահպանում են լոկալ գույնի նախնական թարմությունը և գունաշերտի ամրությունը: Մ. թ. ա. XIV դարից Մ. օգտագործվել է Եգիպտոսում, տաճարների ճակատները երանգավորելու համար: Հին Հունաստանում մ. թ. ա. V դ. մշակվել է տաք եղանակով Մ-ի ավելի կայուն տեխնոլոգիա (է ն կ ա ու ս տ ի կ ա, հուն. ἔγκαυστική, < ἐγκαίω — այրել). ուժեղ տաքացված մոմաներկերը բրոնզե շիկացված բահիկներով լցնում էին հիմնաշերտի վրա: Ըստ



Տղամարդու դիմանկար, Ֆայյում (մ. թ. I դ.)

Պլինիոս Ավագի, այդ եղանակով նկարել են Զնքսիսը և Պարասիոսը (աշխատանքները չեն պահպանվել): Ֆայյումյան դիմանկարները (մ. թ. ա. I դ.—մ. թ. IV դ., տես *Ֆայյում*) և բյուզանդական սրբապատկերները (մինչև XII դ.) կատարվել են Մ-ի տեխնիկայով, որտեղ էնկաուստիկան հետզհետե փոխարկվել է բսեկնայուղային մոմաներկերով (այսպես կոչված՝ սառը եղանակ) և մոմե տեմպերայով (ցնդող յուղերի խառնուրդով էմուլսիաներ): Մեր ժամանակներում Մ. կիրառվում է հիմնականում ստեղծագործությունները վերականգնելու և գունաշերտերը ամրացնելու համար:

**ՄՈՄԱՆՅՈՒԹԵՐ**, մ ո մ ե ր, բուսական և կենդանական ծագում ունեցող ճարպանման նյութեր, բարձրամոլեկուլային միատոմ սպիրտների և ճարպաթթուների էսթերներ են: Ամորֆ են, դյուրաբեկ և տաքացնելիս հեշտությամբ փափկում են: Հալվում են 40—90°C-ում: Ջրում անլուծելի են, լուծվում են բենզինում: Քիմ. և ֆիզիկական հատկություններով նման են *ճարպերին*: Տարբերում են կենդանական, բուսական և հանքային Մ.: Կ ե ն դ ա ն ա կ ա ն Մ. (օրինակ՝ մեղրամոմ) ստացվում են մեղուների և այլ միջատների մոմագեղձերից, լանոլինը՝ ոչխարի բրդից (լվանալիս), սպերմացետը՝ կաշալոտի ճարպից ևն: Բ ու ս ա կ ա ն Մ. նուրբ շերտով պատում են բույսի ցողունը, տերևները և պտուղները (կանխում են սնկային հիվանդությունները, կարգավորում բույսի ջրային ռեժիմը): Դրանցից են. կարնաուբյան (ստացվում է բրազիլական արմավենու տերևներից), կանդելիլյան ևն Մ.: Հ ա ն ք ա յ ի ն Մ. (օզոկերիտ, ցեբեյին) ստացվում են գորշ ածխից և տորֆից: Սինթետիկ Մ. ստացվում են ածխածնի օքսիդը հիդրելով կամ ցածրամոլեկուլային բազմաօլեֆիններից (օրինակ, 2000—10.000 մոլ. զանգվածով պոլիէթիլենից): Մ. օգտագործվում են փայլեցնող, գործվածքը անջրանցիկ դարձնող խառնուրդներ պատրաստելու, կաշին, ռետինը, թուղթը մշակելու, պոլիմերները մամլելու ևն համար), որպես գեղակերպ նյութեր՝ քանդակագործության մեջ (Պետրոս Մեծի կիսանդրին և արձանը, Էրմիտաժ, Լենինգրադ ևն): Մ. գեղանկարչական մոմաներկերի հիմքն են: Մ-ի բարակ շերտով պահպանում են մարմարե արձանները ջրի ազդեցությունից:

**ՄՈՄԵՆՏՆԵՐ** (< լատ. momentum — շարժիչ ուժ, հրում, < moveo — շարժում եմ), մաթեմատիկական հասկացություն, որը կարևոր դեր է խաղում մեխանիկայում, հավանականությունների տեսության, ինչպես նաև ֆունկցիաների տեսության մեջ: Եթե թվային ուղղի $x_1$, $x_2$, ... աբսցիսներ ունեցող կետերում տեղաբաշխված է համապատասխանաբար $m_1$, $m_2$, ... $(m_i>0)$ զանգվածներ ունեցող մի համախումբ, ապա այդ համախմբի k-րդ կարգի մոմենտ a կետի նկատմամբ կոչվում է $c_k = \sum_i (x_i-a)^k m_i = (x_1-a)^k m_1 + (x_2-a)^k m_2 + \dots$ մեծությունը (թիվը): Եթե համախմբի բաշխումը կամայական է և բնութագրվում է $\sigma(x)$ չնվազող ֆունկցիայով [$\sigma(x+\Delta x)-\sigma(x)$-ը $(x, x+\Delta x)$ միջակայքում տեղաբաշխված զանգվածն է], ապա k-րդ կարգի մոմենտը (a կետի նկատմամբ) որոշվում է Ստիլտեսի ինտեգրալով՝

$$c_k=\int_{\infty}^{\infty}(x-a)^k d\sigma(x):$$

Եթե $a=0$, ապա մոմենտը կոչվում է սկզբնական:

Հ ա վ ա ն ա կ ա ն ու թ յ ու ն ն ե ր ի տ ե ս ու թ յ ա ն մեջ աբսցիսների դերը կատարում են *պատահական մեծության* ընդունած արժեքները, իսկ զանգվածների դերը՝ համապատասխան հավանականությունները: Այսպես, պատահական մեծության մ ա թ ե մ ա տ ի կ ա կ ա ն ս պ ա ս ու մ ը առաջին կարգի սկզբնական մոմենտ է, իսկ դ ի ս պ ե ր ս ի ա ն՝ երկրորդ կարգի մոմենտ:

Մաթ. անալիզի շատ հարցեր սերտորեն կապված են, այսպես կոչված, մ ո մ ե ն տ ն ե ր ի խ ն դ ր ի (պ ր ո բ լ ե մ ի) հետ: Այն հետևյալն է. տրված է թվերի մի $C_1$, $C_2$, ... հաջորդականություն. գտնել մի այնպիսի $\sigma(x)$ չնվազող ֆունկցիա, որի սկզբնական Մ. լինեն (այդ) $C_1$, $C_2$, ... թվերը:

Այս խնդիրը առաջին անգամ դրել և լուծել է Թ. Ստիլտեսը, 1894—95-ին (Մ-ի պրոբլեմին վերաբերող մի խնդիր դրել և մասնակիորեն լուծել է *Չեբիշևը*, 1873-ին): Ընդհանրապես ասած, միշտ չէ, որ Մ-ի պրոբլեմը լուծելի է. տրված $(C_n)$ հաջորդականության համար կարող է համապատասխան $\sigma(x)$ գոյություն չունենալ. հնարավոր է նաև, որ այդպիսի $\sigma(x)$-ը միակը չլինի: Նայած թե $\sigma(x)$-ը փնտըրվում է ամբողջ առանցքի, դրական կիսաառանցքի, վերջավոր հատվածի վրա, համապատասխան Մ-ի պրոբլեմն անվանում են Համբուրգերի, Ստիլտեսի, Հաուսդորֆի:

*Գրկ.* Ахиезер Н. И., Классическая проблема моментов и некоторые вопросы анализа, связанные с нею, М., 1961.

*Լ. Միքայելյան*

**ՄՈՄԶԵՆ** (Mommsen) Թեոդոր (1817—1903), գերմանացի պատմաբան: Հին Հռոմի պատմության և իրավունքի մասնագետ: Լայպցիգի (1848-ից), Ցյուրիխի (1852-ից), Բրեսլաուի (Վրոցլավ, 1854-ից), Բեռլինի (1858—1903-ին) համալսարանների պրոֆեսոր: Մասնակցել է 1848—49-ի հեղափոխությանը, հարել գերմ. բուրժուազիայի ձախ թևին: Ընտրվել է պրուս. անդտագի (1863—66, 1873—79), ապա՝ գերմ. ռայխստագի (1881—84) դեպուտատ: Հիմնական աշխատությունը՝ «Հռոմի պատմությունը» (հ. 1—3,5, Բեռլին, 1854—1885) գրել է 1848—49-ի հեղափոխության ազդեցությամբ, արտահայտել XIX դ. 50-ական թթ. գերմ. բուրժուազիայի ձգտումները՝ ֆեոդալիզմի մնացուկների վերացում, Գերմանիայի միավորում: I—III հատորներում իրադարձությունների ընթացքը շարադրել է մինչև մ. թ. ա. 46-ը: V հատորում (IV հատորը չի գրել) տրված է հռոմ. պրովինցիաների պատմությունը մ. թ. ա. I—մ. թ. III դդ.: Մ. հիմնավորել և զարգացրել է «դեմոկրատական միապետության» գաղափարը՝ դրա մարմնավորումը տեսնելով Հուլիոս Կեսարի բռնապետության մեջ: Բացառիկ դեր է հատկացրել նշանավոր գործիչներին (Ալեքսանդր Մակեդոնացի, Հաննիբալ, Գայոս Գրակքոս, Հուլիոս Կեսար ևն): Մ. Հռոմի արտաքին քաղաքականության կապակցությամբ բազմիցս անդրադարձել է Հայաստանի պատմությանը, հռոմեա-հայկական հարաբերություններին: Հիմք ունենալով հունա-հռոմեական սկզբնաղբյուրների միտումնավոր տեղեկությունները, հաճախ սխալ է գնահատել հայ գործիչների (Տիգրան Բ Մեծ և ուրիշներ) գործունեությունը և Հայաստանի պատմության շատ հարցեր: Մ. գրել է ավելի քան 1500 ուսումնասիրություն նվիրված Հին Հռոմի պատմության գրեթե բոլոր հարցերին. պետ. իրավունք, գրականություն, լեզվաբանություն, դրամագիտություն, ժամանակագրություն, չափագիտություն: Հրատարակել է սկզբնաղբյուրներ (մեկնաբանություններով), ղեկավարել լատ. արձանագրությունների ժողովածուի հրատարակումը (1863-ից): Արժանացել է Նոբելյան մրցանակի (1902):

*Երկ.* История Рима, т. 1—3, 5, М., 1936—49.
*Գրկ.* Ковалев С. И., Моммзен и его «История Рима», в кн: Моммзен Т., История Рима, т. 1, М., 1936:

**ՄՈՄԻԿ**, Մ ո մ ի կ Վ ա ր դ ա պ ե տ (ծն. թ. անհտ.—1333), XIII դ. վերջի — XIV դ. 1-ին կեսի հայ մանրանկարիչ, քանդակագործ, ճարտարապետ: *Գլաձորի մանրանկարչության դպրոցի* նշանավոր ներկայացուցիչ: Ստեղծագործել է Վայոց ձորում, Օրբելյան իշխանական տան տիրույթներում (հովանավորն է եղել Սյունիքի միտրոպոլիտ, նշանավոր պատմիչ Ստեփանոս Օրբելյանը), վաղ շրջանում՝ հավանաբար նաև Կիլիկիայում: Մ-ի մանրանկարներից մեզ են հասել երեք վավերական և մեկ անստորագիր ձեռագիր: Մեկը գտնվում է Վիեննայի Մխիթարյանների գրապահոցում, երեք Ավետարանները՝

Երևանի Մեսրոպ Մաշտոցի անվան Մատենադարանում (1283—84, ձեռ. № 6764, 1292, ձեռ. № 2848, 1302, ձեռ. № 6792): Մ. առաջին անգամ որպես ծաղկող հիշատակվում է Կիլիկիայում Կեռան թագուհու պատվերով ստեղծված 1283—84-ի Ավետարանում: Եղել է Վայոց ձորի Թանատ-Գլաձորի վանքի գրչատան ղեկավարներից: Մ-ի արվեստին բնորոշ է հոգեբանական խորությունը, կատարման վարպետությունը: 1292-ի Ավետարանում նա հանդես է բերել ընդգծված կոթողային մտածողություն: Կանխամտածված խախտելով ճարտ. ֆոնի և ֆիգուրների համեմատական մասշտաբները, առավել արտահայտչականությամբ է օժտել պատկերները, ընդգծել ծավալայնությունը: Ստեփանոս Օրբելյանի պատվերով ստեղծված 1302—04-ի Ավետարանում ակնառու է ձևերի մանրամասն դրվագավորումը, ֆիգուրների նրբին մշակումը: Նկարաթերթի փոքր չափերը (ձեռագրի չափերն են՝ 12×8,7 *սմ*) կարծես չեն մտահոգել նկարչին, ընդհակառակը՝ առաջադրել են կերպավորման նոր խնդիրներ. «Համբարձում» պատկերում փոքրիկ էջի վրա տեղավորված են 17 ֆիգուր, արտահայտիչ դեմքերով, էքսպրեսիվ, երբեմն նույնիսկ արտակարգ դինամիկ: Մնալով պատկերագրական տիպերի թելադրած պարտադիր սխեմաների սահմաններում՝ Մ. ֆիգուրների տեղադրման, նրանց շարժումների հարցերում հանդես է բերել ազատ մոտեցում: Մ-ի արվեստի պատկերագրությունը իր արմատներով հարում է վաղ քրիստոնեական տիպերին, դրանով իսկ հանդիսանալով հայկ. հնամենի ավանդույթների կրողը XIII դ. վերջի — XIV դ. սկզբի մանրանկարչության մեջ: Միաժամանակ նրան օտար չէին ժամանակակից առաջավոր պալեոլոգյան արվեստի սկզբունքները, ըստ երևույթին, միջնորդավորված կիլիկյան մանրանկարչությամբ:

1305—06-ին Մ. *Նորավանքում* կերտել է Ստեփանոս Օրբելյանի հիշատակը հավերժացնող խաչքար, իսկ 1308-ին մեկ այլ խաչքար՝ Թամթա խաթունի հանձնարարությամբ: Մեծ վարպետությամբ կերտված այդ խաչքարը (այժմ գտնվում է Էջմիածնում) աչքի է ընկնում իր ներդաշնակ համաչափություններով ու զարդաձևերի նրբագեղ, երկպլանային կերտվածքով: Խաչքարի վերին մասը գրավող «Դեհսուս» կոմպոզիցիան ներկայացնող կերպարները արտակարգ գեղանի են, ունեն խիստ ուժեղ ելուստ և կարծես նախորդում են տարիներ հետո Նորավանքում կերտված քանդակներին: Այս շրջանում է, որ նրա աչքերը հիվանդացել են, ու թեև մի ձեռագրի հիշատակարանում նա գրել է, որ «սակաւ ամաց» աչքերը լավացել են, սակայն փաստ է, որ Մ. այլևս չի վերադարձել մանրանկարչությանը, ամբողջովին կլանվելով քանդակով և ճարտարապետությամբ: Մ-ի ճարտարապետական առաջին վավերական գործը վերասլաց համաչափություններով, դարչնագույն տուֆից կերտված *Արենիի* կենտրոնագմբեթ եկեղեցին է (1321): Այստեղ Մ. հրաժարվել է արմ. ավանդատներից՝ գմբեթակիր կամարները հենելով մույթերին: Եկեղեցու ներսակողմում, առագաստների վրա քանդակված են ավետարանիչների խորհրդանշանները, իսկ արմ. մուտքի ճակատակալ քարի շքեղ, ծաղկահյուս ֆոնի վրա՝ Աստվածամայրը՝ մանուկ Հիսուսը գրկին: Հուշարձանի արտաքին ճակատների սլացիկ, հարթային մշակմանը համահնչուն է Աստվածամոր պատկերաքանդակի նույնպիսի հարթային մշակումը, մինչդեռ ավետարանիչների խորհրդանշանների քանդակները, հատկապես նրբորեն մշակված հրեշտակի պատկերաքանդակը, ունեն առավել ցայտուն ռելիեֆ: Այս պատկերաքանդակներում որոշակի է աղերսը հայկ. մանրանկարչությանը բնորոշ ընդհանրացված ձևերի հետ: 1321-ի երկրաշարժից հետո վերակառուցվել է Օրբելյանների տոհմային հոգևոր կենտրոնի՝ Նորավանքի գավթի ստալակտիտավոր գմբեթը, արմ. պատը, ավելացվել է նոր շքամուտք և դրան ու լուսամուտի ճակատակալ քարերի վրա քանդակվել են Աստվածամայրը՝ մանուկ Հիսուսը գրկին և Հայր Աստվածը՝ ձեռքին Ադամի գլուխը: Որոշակի հիմքեր կան այս ամենը վերագրելու Մ-ին: Այստեղ արվեստագետը խուսափել է կանոնիկ հանրահայտ սյուժեներից, մի մոտեցում, որ առկա է Մ-ի ինչպես մանրանկարչական, այնպես էլ քանդակագործական և ճարտարապետական աշխատանքներում: Օրբելյան Բուրթել իշխանը Մ-ին է հանձնարարել Նորավանքում երկհարկ դամբարան եկեղեցու կառուցումը: Թեև չեն պահպանվել Մ-ի հեղինակությունը հաստատող վկայություններ, սակայն հուշարձանի ձևերի վերլուծությունը տարակույս չի թողնում այս հարցում: Ճիշտ է, հուշարձանը ավարտվել է 1339-ին (Մ. մահացել է 1333-ին), սակայն դա պետք է բացատրել ճոխ, արտակարգ հարուստ հարդարանքը իրականացնելու համար անհրաժեշտ ժամանակով: Պատահական չէ նաև, որ ըստ պահպանված ավանդության, հատկապես Մ-ին է վերագրվում այս հոյակերտ կառույցի շինարարությունը: Նորավանքի այս եկեղեցին Մ-ի վերջին գործը եղավ: Այն առանձնանում է կառուցողական արտակարգ միասնականությամբ, ծավալային ձևերի ու առանձին համամասնությունների մշակման ասպարեզում ակնհայտորեն զգացվում է մեծ վարպետի հմուտ ձեռքը: Մ-ի գործունեության մեջ զարմանալի կերպով միահյուսվել են ավանդականությունն ու վառ անհատականությունը, և ինչպես ամեն մի մեծ վարպետ, նա չի սահմանափակվել մի ժանրի սահմաններում: Մ. ստեղծել էր իր ինքնատիպ գեղարվեստական դպրոցը, որտեղ սերտ համագործակցության մեջ աշխատում էին բազմաթիվ տաղանդավոր վարպետներ՝ մանրանկարիչներ, քանդակագործներ և ճարտարապետներ, և այդ դպրոցի շրջանակներում է, որ ստեղծվել են Վայոց ձորի XIV դ. 1-ին կեսի բազմաթիվ հոյակերտ հուշարձաններ: Մ. մահացել է Նորավանքում, ուր նրա հիշատակին խաչքար է կանգնեցված:

*Գրկ.* Բարխուդարյան Ս., Միջնադարյան հայ ճարտարապետներ և քարգործ վարպետներ, Ե., 1963: Հովսեփյան Գ., Մոմիկ «սարկավագ», «Նաիրի», 1947, № 3, էջ 115—121: Մնացականյան Ս. Խ., XIV դարի հայ քանդակագործ, ճարտարապետ և նկարիչ Մոմիկը, «ՊԲՀ», 1968, № 3: Ավետիսյան Ա., Հայկական մանրանկարչության Գլաձորի դպրոցը, Ե., 1971: Степанян И., Чакмакчян А., Декоративное искусство средневековой Армении, Л., 1971, с. 39—41; Der Nersessian S., L'art Arménien, P., 1977, p. 181—182, 196—197; Thierry J. M., La sculpture des portails au bas Moyen Age, «Archéologie», P., 1979, № 126, p. 46, 48—49.

*Ս. Մնացականյան, Է. Զաքարյան*

**ՄՈՄԼԱԹ**, գործվածք, որի մեկ կամ երկու կողմը պատվում է անջրաթափանց ծածկույթով. չորացող բուսական ներկով (յուղաներկ Մ.), խտացված բարձրաստիճանային լատեքսներով (լատեքսային Մ.) կամ պլաստիֆիկացված պոլիվինիլքլորիդով (պոլիվինիլքլորիդային Մ.): Ծածկույթները պարունակում են մեծ քանակությամբ լցանյութեր: Մ-ի համար կիրառում են հարթ կամ խավոտ գործվածք, երբեմն փափկության համար այն փոխարինում են պորոլոնով: Կիրառվում է կենցաղային կարիքների համար, պոլիգրաֆիայում, կարի, կահույքի արդյունաբերության մեջ, բժշկ. նպատակներով ևն: Մ-ի 1 $մ^2$ զանգվածը 300—400 *գ* է:

**ՄՈՄՋՅԱՆ** Խաչիկ Նշանի [ծն. 25.2(10.3). 1909, Տրապիզոն], հայ սովետական փիլիսոփա: Փիլ. գիտ. դ-ր (1951), պրոֆեսոր (1956), ՌՍՖՍՀ գիտ. վաստ. գործիչ (1969): ՍՄԿԿ անդամ 1944-ից: Ավարտել է փիլ-յան, գրականության և պատմության Մոսկվայի ինստ-ի փիլ-յան ֆակուլտետը (1934): 1937—40-ին եղել է Մոսկվայի կրոնի և աթեիզմի պատմության թանգարանի արևմտաեվրոպական բաժնի վարիչ, ՀՍՍՀ ԳԱ առաջին գիտ. քարտուղար (1943—47), միաժամանակ 1944—47-ին կատարել է դիվանագիտական աշխատանք, 1947—49-ին՝ ՀՍՍՀ ԳԱ փիլիսոփայության սեկտորի վարիչ, 1951—53-ին «Լրաբեր հասարակական գիտությունների»-ի խմբագիր, 1955—58-ին՝ Մոսկվայի պետ. համալսարանի դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի ամբիոնի վարիչ, 1958—62-ին՝ ՍՄԿԿ ԿԿ օրգան «Կոմունիստ» («Коммунист») ամսագրի խմբագրական կոլեգիայի անդամ և փիլիսոփայության բաժնի խմբագիր: 1967-ից ՍՄԿԿ ԿԿ առընթեր հասարակական գիտությունների ակադեմիայի մարքս-լենինյան փիլիսոփայության ամբիոնի վարիչ, 1977-ից՝ ՍՍՀՄ սոցիոլոգիական ասոցիացիայի վարչության նախագահ: Միջազգային սոցիոլոգիական ասոցիացիայի գործադիր կոմիտեի (1978-ից) և այդ կազմակերպության օրգան «Քարընթ սոսիոլըջի» («Carrent sociology») պարբերականի խմբագրական կոլեգիայի անդամ (1977-ից): Մ-ի գիտ. ուսումնասիրությունները հիմնականում վերաբերում են աթեիզմի և մատերիալիզմի պատմությանը Ֆրանսիայում [«Հելվեցիուսի փիլիսոփայությունը», 1955 (ռուս.), կազմել, խմբագրել և գիտ. առաջաբանով հրատարակել է (ռուս.) Դ. Դիդրոյի, Պ. Մարեշալի, Կ. Ֆ. Վոլնեյի, Պ. Հոլբախի, Կ. Հելվեցիուսի ստեղծագործությունները], պատմական զարգացման օրինաչափություններին [«Սոցիալիստական հասարակությունը և ժողովրդական զանգվածների ստեղծագործական ակտիվությունը», 1954 (ռուս.),



Խ. Ն. Մոմջյան

«Սոցիալական զարգացման մարքսիստական-լենինյան տեսությունը», 1978 (ռուս., համահեղինակ) են], արդի բուրժ. փիլիսոփայության քննադատությանը [«Մարքսիզմը և ռենեգատ Գարոդին», 1973 (ռուս.) են]: Աշխատությունները թարգմանվել են բազմաթիվ լեզուներով:

Պարգևատրվել է Ժողովուրդների բարեկամության և «Պատվո նշան» շքանշաններով:

*Երկ.* Գեներալ ադյուտանտ Ի. Դ. Լազարև, Ե., 1943: Կոմունիզմը և քրիստոնեությունը, Ե., 1978: Октябрьская революция и крах идеалистических концепций общественного развития, М., 1967; Поль Лафарг и философия марксизма, М., 1978; Socialism: Its Present and Future, M., 1963; The Dynamic Twentieth Century, M., 1968. *Ռ. Խաչյան*

**ՄՈՅ**, գյուղ Արևմտյան Հայաստանում, Վանի վիլայեթի Արճեշ գավառում: 1909-ին ուներ 15 ընտանիք հայ բնակիչ: Զբաղվում էին երկրագործությամբ և անասնապահությամբ: Մ-ի հայերը 1915-ի հուլիսին, ռուս. զորքերի նահանջի ժամանակ, գաղթել և բնակություն են հաստատել Արևելյան Հայաստանում:

**ՄՈՅՐԱՆԵՐ** (հուն. Μοιραι), մարդկանց ճակատագրերի աստվածուհիները հին հունական դիցաբանության մեջ: Համարվել են Զևսի և Թեմիդայի դուստրերը: Սկզբնապես կարծել են, որ յուրաքանչյուր մարդ ունեցել է իր Մ. (ճակատագիրը, բախտը): Ավելի ուշ Մ-ի թիվը հանգեցրել են երեքի (Կլոթո, Լաքեսիս, Ատրոպոս): Նրանց պատկերել են տարեց կանանց տեսքով, որոնք անվերջ մանում են մարդկային կյանքի թելը. Կլոթոն իբր մանում է այդ թելը, Լաքեսիսն այն տարածում է մարդկանց հեղհեղուկ ու փոփոխական կյանքի մեջ, իսկ Ատրոպոսը նշանակված ժամին կտրում է այդ թելը և ընդհատում կյանքը:

**ՄՈՆԱԴ** [< հուն. μονάς (μονάδος)— միավոր, անբաժանելի], հասկացություն, որ նշանակում է կեցության պարզագույն հիմնատարր, անբաժանելի մաս: Իդեալիստական ուսմունքներում ստացել է հոգեկանի նշանակություն և հակադրվել նյութական ատոմին: Մ-ի մասին ամբողջական ուսմունք (մոնադաբանություն) է մշակել Գ. *Լայբնիցը*:

**ՄՈՆԱԽՈՎ** Նիկոլայ Ֆեոդորովիչ (1875—1936), ռուս սովետական դերասան: ՌՍՖՍՀ ժող. արտիստ (1932): Դերասանական գործունեությունն սկսել է դրամատիկ թատրոնում (1895), 1896-ից ելույթ է ունեցել էստրադայում, 1904-ից խաղացել Կիևի, Սարատովի, Օդեսայի, Մոսկվայի «Էրմիտաժ», «Ազատ թատրոն» (1913—14-ին, ղեկ. Կ. Ա. Մարջանիշվիլի), Պետերբուրգի «Բուֆ» և այլ օպերետային թատրոններում: Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո ակտիվորեն մասնակցել է դրամատիկական Մեծ թատրոնի (այժմ՝ Մ. Գորկու անվ.) կազմակերպմանը, եղել առաջատար դերասան: Դերերից են՝ Ֆիլիպ թագավոր (Շիլլերի «Դոն Կարլոս»), Եգոր Բուլըչով, Մորուքավոր զինվոր (Մ. Գորկու «Եգոր Բուլըչովը և ուրիշները», «Դոստիգաևը և ուրիշները»), կատակերգական դերերից՝ Տրուֆալդինո (Գոլդոնիի «Երկու տիրոջ ծառան») են: Նկարահանվել է կինոյում:



**ՄՈՆԱԿՈ** (Monaco), պետություն Հարավային Եվրոպայում, Միջերկրական ծովի ափին: Սահմանակից է Ֆրանսիային: Տարածությունը 1,9 *կմ²* է, բնակչությունը՝ ավելի քան 25 հզ. (1979), որից 15,6 հզ. ֆրանս., մոտ 4 հզ. իտալ. քաղաքացիներ են և մոտ 5 հզ.՝ մոնեգասկներ (Մ-ի հպատակներ): Բաղկացած է միմյանց ձուլված Մոնակո (մայրաքաղաքը), Մոնտե-Կարլո և Կոնդամին օկրուգ-քաղաքներից: Պաշտոնական լեզուն ֆրանս. է, դավանանքը՝ կաթոլիկությունը, տոմարը՝ գրիգորյանը:

Մ. սահմանադրական միապետություն է (իշխանություն): Գործող սահմանադրությունն ընդունվել է 1962-ին: Պետության գլուխը՝ իշխանը, Ազգային խորհրդի (պառլամենտ) հետ համատեղ իրականացնում է օրենսդրական իշխանությունը: Ընտրական իրավունքից օգտվում են 21 տարին լրացրած քաղաքացիները: Գործադիր իշխանության բարձրագույն մարմինը կառավարական խորհուրդն է՝ պետ. մինիստրի գլխավորությամբ: Դատական համակարգը կազմում են առաջին ատյանի, հաշտարար և ապելյացիոն դատարանները: Մ-ում, որոշ բացառություններով, կիրառվում է ֆրանս. օրենսդրությունը:

Որպես իշխանություն Մ. հայտնի է 1419-ից: 1524—1641-ին եղել է իսպանական տիրապետության տակ, ապա՝ ֆրանս. պրոտեկտորատ (1793—1814-ին մտել է Ֆրանսիայի կազմի մեջ): 1814—15-ի Վիեննայի կոնգրեսի որոշմամբ Մ. անցել է Սարդինիայի թագավորության հովանավորության տակ (մինչև 1849-ը): 1861-ին իշխան Կարլոս III-ը, ըստ էության, համաձայնել է ֆրանս. պրոտեկտորատին:




Ֆրանսիայի հետ հարաբերությունները կարգավորվում են համաձայնագրերով (1951, 1963 են):

Մ-ում են գտնվում Եվրոպայի ամենահզոր ռադիոկայաններից «Մոնտե-Կարլո»-ն, Միջազգային հիդրոգրաֆիական բյուրոն, Տուրիզմի միջազգային ակադեմիան, Օվկիանոսագիտական թանգարանը (հիմնադրվել է 1899-ին, օվկիանոսագիտական հետազոտությունների միջազգային կենտրոն) են միջազգային կազմակերպություններ: Ունի Երաժշտության ակադեմիա:



Մոնտե-Կարլո

Մ. տուրիզմի (տարեկան այցելում է 0,5—0,7 մլն մարդ) և միջազգային հռչակ վայելող առողջարանների կենտրոններից է, որոնք, ինչպես նաև խաղատներն ու նամականիշերի թողարկումը, Մ-ի եկամուտների հիմնական աղբյուրն են: Կան սննդի, թեթև արդյունաբերության, շինանյութերի ձեռնարկություններ, հախ-



Մոնակո

ճապակու, մայոլիկայի արտադրություն, հուշանվերների պատրաստում: Հարկային բարենպաստ ռեժիմի շնորհիվ Մ-ում են գտնվում միջազգային բազմաթիվ ընկերությունների ու բանկերի վարչություններ:

Դրամական միավորը ֆրանս. ֆրանկն է:

**ՄՈՆԱՑԻՏ** (գերմ. Monazit, < հուն. μονάζω — ապրում եմ միայնակ), միներալ, հազվագյուտ տարրերի՝ հիմնականում ցերիումի խմբի, ֆոսֆատ: Քիմ. կազմը՝ Ce, La... $[PO_4]$: Հաճախ պարունակում է տարբեր խառնուրդներ, որոնցից կարևոր են՝ $ThO_2$ (մինչև 10% և ավելի), $UO_2$ (մինչև 6,6%), $ZrO_2$, CaO, ինչպես նաև $SiO_2$, $SO_3$: Բյուրեղագիտական համակարգը մոնոկլինային է: Առաջացնում է թերթավոր, երբեմն հաստ աղյուսաձև բյուրեղներ, անկանոն հատիկներ, հատիկավոր զանգվածներ: Սովորաբար ուժեղ ռադիոակտիվ է. Գույնը՝ դեղինից, դեղնականաչից մինչև շագանակագույն, կարմրագորշ: Կարծրությունը՝ 5—5,5, խտությունը՝ 4900—5500 *կգ/մ*$^3$: Մ-ի հանքավայրերը հիմնականում կապված են գրանիտների, պեգմատիտների, սակավ՝ ալկալիական գրանիտներում, սիենիտներում հիդրոթերմալ կարբոնատային երակների հետ: Արդյունահանվում է գլխավորապես գետային և ծովային ցրոններից (օրինակ, Հնդկաստանում, Շրի Լանկայում, Բրազիլիայում): Հումք է ցերիում և թորիում ստանալու համար:

**ՄՈՆԲԼԱՆ** (ֆրանս. Mont Blanc, իտալ. Monte Bianco), լեռնազանգված Արևմտյան Ալպերում: Ձգվում է Ֆրանսիայի, Իտալիայի և Շվեյցարիայի սահմաններով՝ հվ-արմ-ից հս-արլ. 50 *կմ* երկարությամբ: Բարձրությունը մինչև 4807 *մ* է (Ալպերի և Արևմտյան Եվրոպայի ամենաբարձր գագաթը): Կազմված է գրանիտներից, գնեյսներից, թերթաքարերից: Ժամանակակից սառցապատման տարածությունը 277 *կմ*$^2$ է: Ալպինիզմի կենտրոն է: Մ-ի վրա կա աստղադիտարան և օդերևութաբանական կայան: Մ-ով է ձգվում ֆրանս-իտալական ավտոմայրուղու 11,6 *կմ* երկարությամբ թունելը:

**ՄՈՆԳՈԼՖԻԵ** (Montgolfier) Ժոզեֆ (1740—1810) և Էտյեն (1745—1799) եղբայրներ, աերոստատի ֆրանսիացի գյուտարարներ: Նրանց կառուցած՝ տաք ծխով լցված օդապարիկի («մոնգոլֆիեր»)առաջին թռիչքը տեղի է ունեցել 1783-ի հունիսի 5-ին, Վիդալոն-լեզ-Անոնե քաղաքում, իսկ մարդկանց թռիչքն այդ օդապարիկով՝ 1783-ի նոյեմբ. 21-ին, Փարիզում (տես *Օդագնացություն*):

**ՄՈՆԳՈՆԵՐ**, ժողովուրդ Զաիրի Հանրապետությունում: Ձևավորվել է մի շարք ցեղախմբերից: Թիվը մոտ 4,3 մլն (1975): Լեզուն պատկանում է *բանտու* լեզուների կենտրոնական խմբին: Մ-ի լեզվի մի քանի բարբառներով գոյություն ունի գիր: Զգալի մասը քրիստոնյա է (կաթոլիկներ), արևադարձային անտառների խորքերում բնակվողները պահպանում են նախնադարյան պաշտամունքի տարրեր: Հիմնականում զբաղվում են արորային երկրագործությամբ, օժանդակ դեր ունեն որսորդությունը, ձկնորսությունն ու հավաքչությունը: Մի մասն աշխատում է յուղատու արմավենու և սուրճի պլանտացիաներում, ինչպես նաև գյուղատնտ. հումքի մշակման արդյունաբերության մեջ: Անցյալում Մ. գործուն մասնակցություն ունեին փղոսկրի և ստրուկների վաճառքի մեջ:

**«ՄՈՆԴ»** («Le Monde»), ֆրանսիական ամենօրյա երեկոյան թերթ, լույս է տեսնում 1944-ից, Փարիզում: Նախատեսված է մտավորականության և լիբերալ բուրժուազիայի համար, բուրժ. օբյեկտիվիզմի դիրքերից լայնորեն լուսաբանում է ինչպես Ֆրանսիայի, այնպես էլ միջազգային քաղ. իրադարձությունները:

**ՄՈՆԴՐԻԱՆ** (Mondrian, Mondriaan) Պիտ (իսկականը՝ Պ ի տ ե ր Կ ո ռ ն և լ ի ս, 7.3.1872, Ամերսֆորտ, Ուտրեխտի մոտ — 1.2.1944, Նյու Յորք), նիդերլանդացի նկարիչ: Սովորել է Ամստերդամի Գեղարվեստի ակադեմիայում (1892—97): Ապրել է Փարիզում (1911—14 և 1919—38), Լոնդոնում (1938—40), Նյու Յորքում (1940-ից): Հոլանդացի նկարիչների և ճարտարապետների «Ստիլ» խմբավորման հիմնադիրներից է (1917, Լեյդեն): Կրել է *կուբիզմի* ազդեցությունը: *Նեոպլատոնականության* ոգով «ունիվերսալ ներդաշնակության» ձգտումը արտահայտվել է Մ-ի 1917-ից հետո ստեղծած, այսպես կոչված, նեոպլաստիցիստական (*աբստրակտ արվեստի* առաջին տարատեսակներից) նկարներում, որոնք սպեկտրի հիմնական գույներով, ինչպես նաև սպիտակով (հաճախ գերակշռող), սևով և մոխրագույնով երանգավորված, փոխուղղահայաց եզրագծերով բաժանված տարբեր ուղղանկյուն մարմինների խիստ հավասարակշռված զուգորդումներ են («Կոմպոզիցիա կարմիրով, դեղինով և կապույտով», 1921, Քաղաքային թանգարան, Հաագա, «Կոմպոզիցիա», 1922, Քաղաքային թանգարան, Ամստերդամ):



Պ. Մ ո ն դ ր ի ա ն. «Կոմպոզիցիա կարմիրով, դեղինով և կապույտով» (1921, Քաղաքային թանգարան, Հաագա)

**ՄՈՆԵ** (Monet) Կ լ ո դ Օսկար (14.2.1840, Փարիզ —6.12.1926, Ժիվեռնի, Նորմանդիա), ֆրանսիացի նկարիչ, *իմպրեսիոնիզմի* հիմնադիրներից: 1858—59-ին սովորել է Հավրում՝ Է. Բուդենի մոտ, 1859—60-ին՝ Փարիզի Սյուիս ակադեմիայում: Պլեներային գեղանկարչության ասպարեզում զարգացնելով *Բարբիզոնի դպրոցի* և Բուդենի նվաճումները՝ Մ. 1860-ական թթ. 2-րդ կեսից ձգտել է հաղորդել լուսաօդային միջավայրի փոփոխությունը, բնության գունային հարստությունը («Նախաճաշ բնության գրկում», 1866, Ա. Պուշկինի անվ. կերպարվեստի թանգարան, Մոսկվա): 1860-ական թթ. վերջերից Մ. ստեղծագործել է հիմնականում բնանկարի ժանրում, ուր մարդու ներկայությունը դիտվում է որպես բնապատկերի օրգանական տարրերից մեկը: Իր ստեղծագործություններում ձգտել է մանրացված, անխառն գույների հարաբերումով հասնել օդային միջավայրի թեթևության: Բնանկարային մոտիվը Մ. վերաստեղծել է որպես հավերժ կենդանի բնության մի մասնիկ՝ լի ներքին թրթիռով ու շարժումով, կարծես մի ակնթարթ՝ կորզված հարափոփոխ կյանքի հոսքից («Կապուցինների բուլվարը Փարիզում», 1873, «Բել-Իլի ժայռերը», 1886, երկուսն էլ՝ Ա. Ս. Պուշկինի անվ. կերպարվեստի թանգարան): Ձգտելով արտահայտել բնության և մթնոլորտի փոփոխությունները օրվա տարբեր պահերին և եղանակներին՝ 1890-ական թթ. ստեղծել է պատկեր-տարբերակներ («Ռուանի տաճարը», 1893—95): Մ-ի ուշ շրջանի ստեղծագործություններին բնորոշ է առարկայական աշխարհի նյութական հատկանիշների տարրալուծումը անորոշ, անիրական միջավայրում («Մառախլապատ Լոնդոնը», 1903, Էրմիտաժ, Լենինգրադ), դեկորատիվ պայմանականությունն ու կատարման էսքիզայնությունը («Ջրաշուշաններ» պանոների շարքը, 1914—22, Օրանժերի թանգարան, Փարիզ):



Կ. Մոնե

Պատկերազարդումը տես 712-րդ էջից հետո՝ ներդիրում:

*Գրկ.* Р е й т е р с в е р д О., Клод Моне [пер. со швед.], М., 1965.

**ՄՈՆԵԼ-ՄԵՏԱՂ** [ամերիկյան արդյունաբերող Ա. Մոնելի (A. Monell) անունով], նիկելի համաձուլվածքը պղնձի (27—29%), երկաթի (2—3%) և մանգանի (1,2—1,8%) հետ: Մ-մ-ից պատրաստում են շինվածքներ, որոնք պետք է օժտված լինեն մեծ կոռոզիակայունությամբ և մեխանիկական ամրությամբ: Կիրառվում է արդյունաբերության քիմ., նավաշինական, բժշկ., տեքստիլ և այլ ճյուղերում:

**ՄՈՆԵՐ**, տ ա լ ա ի ն ն ե ր, ժողովուրդ: Բնակվում են Բիրմայի հվ-ում (ավելի քան 400 հզ., 1970) և Թաիլանդի հվ-արմ-ում (մոտ 90 հզ., 1970): Լեզուն պատկանում է *մոն-քխմեր լեզուներին*: Ունեն գիր, որ ստեղծվել է VI դ.: Դավանում են բուդդայականություն: Մ. մշակութային խոշոր ազդեցություն են թողել մ. թ. I հազարամյակում հս-ից իրենց երկիրը ներխուժած բիրմացիների վրա: Հիմնական զբաղմունքը բրնձի մշակությունն է, զարգացած են արհեստները (բրուտագործություն ևն):

**ՄՈՆԹԱՆԱ** (Montana), նահանգ ԱՄՆ-ի հյուսիս-արևմուտքում: Սահմանակից է Կանադային: Տարածությունը 381,1 հզ. $կմ^2$ է, բն.՝ 694 հզ. (1970, քաղաքայինը՝ 53,4%), վարչական կենտրոնը՝ Հելինա: Խոշոր քաղաքներն են Բիլինգսը և Գրեյթ Ֆոլսը: Նահանգի արմ-ում ժայռոտ լեռների ճյուղավորություններն են, արլ-ում՝ Պրերիաների սարավանդը: Կլիման բարեխառն է, ցամաքային: Գլխավոր գետը Միսսուրին է (Ելլոուսթոն վտակով): Կան գունավոր և թանկարժեք մետաղների, ածխի, նավթի, գազի, հիդրոէներգիայի հարուստ պաշարներ: Տարածված են փշատերև անտառները: Մ-ի տարածքում են Գլեյշեր և Ելլոուսթոնյան (մի մասը) ազգային պարկերը: Նահանգի տնտեսության հիմքը լեռնահանքային արդյունաբերությունն ու էքստենսիվ գյուղատնտեսությունն են: Արդյունահանում են պղինձ, ոսկի, արծաթ, նավթ, գազ, ձուլում՝ պղինձ, կապար, ցինկ: Կա անտառահատում, սննդի արդյունաբերություն: Մշակում են հացահատիկ, շաքարի ճակնդեղ, զբաղվում՝ անասնապահությամբ: Զարգացած է տուրիզմը:

**ՄՈՆԹԵՐԵՅ** (Monterrey), քաղաք Մեքսիկայի հյուսիսում, Նուևո Լեոն նահանգի վարչական կենտրոնը: 1,1 մլն բն. (1976): Տրանսպորտային, արդ. և ֆինանսական կարևոր կենտրոն է: Զարգացած է սև և գունավոր մետալուրգիան, քիմ., էլեկտրատեխ., մետաղամշակման, գարեջրի արդյունաբերությունը: Կան տեքստիլ, ցեմենտի արդյունաբերության ձեռնարկություններ: Ունի համալսարան: Հիմնադրվել է XVI դարում:

**ՄՈՆԺ** (Monge) Գասպար (1746—1818), ֆրանսիացի մաթեմատիկոս և հասարակական-պետական գործիչ, Փարիզի ԳԱ անդամ (1780): Մեզյերի ռազմաինժեներական դպրոցի (1768), Փարիզի Պոլիտեխնիկական դպրոցի պրոֆ. (1794): Ֆրանսիական մեծ հեղափոխության շրջանում Մ. *Չափ ու կշռի համակարգ* հաստատելու հանձնաժողովի անդամ էր, 1792—93-ին եղել է ծովային մինիստր: Գործուն մասնակցություն է ունեցել Բարձրագույն նորմալ դպրոցի և Պոլիտեխնիկական դպրոցի հիմնադրմանը: Մասնակցել է Նապոլեոնի եգիպտական արշավանքին (1798—1801): Առաջին կայսրության շրջանում դարձել է սենատոր, ստացել կոմսի տիտղոս: Բուրբոնների վերահաստատումից հետո զրկվել է բոլոր կոչումներից և պաշտոններից:

Մ-ի հիմնական աշխատանքները վերաբերում են երկրաչափությանը: Մ. *գծագրական երկրաչափության* հիմնադիրն է: Մ. հանգամանորեն շարադրել է տարածական կորերի և մակերևույթների դիֆերենցիալ երկրաչափությունը. տվել է մասնական ածանցյալներով հավասարումների երկրաչափական մեկնաբանումը և երկրաչափական փաստերը շարադրել մասնական ածանցյալների տեսության լեզվով: Մ. աշխատանքներ ունի նաև մաթ. անալիզի, քիմիայի, օպտիկայի, օդերևութաբանության և կիրառական մեխանիկայի վերաբերյալ:

**ՄՈՆԻԵԶԻՈԶՆԵՐ**, որոճողների *ճիճվային հիվանդությունների* խումբ: Հարուցիչները բարակ աղիներում մակաբուծվող, 6—10 *մ* երկարությամբ Moniezia սեռի ցեստոդներն են, որոնք զարգանում են արտաքին միջավայրում միջնորդ տիրոջ՝ հողային մանր տզերի (օրիբատիդների) մասնակցությամբ: Տարածված են ամենուրեք: Կենդանիները (հիմնականում մատղաշները) հիվանդանում են խոտի հետ ուտելով վարակված տզերը: Նկատվում է մարսողության խանգարում, ախորժակի անկում, դող, հյուծվածություն, զանգվածային անկումներ ևն: Բուժում են ճիճվամուղ միջոցներով: Կանխարգելումը՝ ճիճվաթափում, մատղաշների ճիշտ խնամք, անասնաբուժական և անասնաբուժական կանոնների կիրառում:

**ՄՈՆԻԶՄ** (< հուն. μόνος— մեկ, միակ), իրականության որակական բազմազանությունը մեկ միասնական նախահիմքով բացատրող ուսմունք: Մոնիստական է նաև տրամաբանական տեսական այն համակարգը, որի հիմքում ընկած է մեկ ելակետային հիմնադրույթ (պոստուլատ): Փիլ. Մ., ի տարբերություն *դուալիզմի* և *պլյուրալիզմի*, *փիլիսոփայության հիմնական հարցը* լուծում է կամ մատերիայի (մատերիալիստական Մ.), կամ ոգու (իդեալիստական Մ.) առաջնության օգտին: Մատերիալիստական Մ-ի բարձրագույն ձևը *դիալեկտիկական մատերիալիզմն* է:

**ՄՈՆՂՈԼԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ**, գիտությունների համակարգ, որն ուսումնասիրում է մոնղոլական ժողովուրդների պատմությունը, տնտեսությունը, ինագիտությունը, ազգագրությունը, լեզուն և գրականությունը: Մ-յան զարգացման հիմք են ծառայել XIII—XVII դդ. մոնղ. հեղինակների ստեղծագործությունները, չին. դինաստիական ժամանակագրությունները, չին., պարսկ., արաբ., հայ, վրացի հեղինակների և ռուս տարեգիրների գործերը, ճանապարհորդների և դեսպանների հուշերը (Պլանո Կարպինի, Վ. Ռուբրուկ, Մարկո Պոլո և ուրիշներ):

Մ. Եվրոպայում սկսել է զարգանալ XVIII դ., երբ ֆրանսիացի միսիոներ չինագետներ Ժ. Բ. Դյուգալդը, Ժ. դը Գինը, Ժ. Մայյան և ուրիշներ առաջին անգամ շրջանառության մեջ են դրել չին. ժամանակագրությունների և պատմական երկերի մի շարք տեղեկությունները մոնղոլների մասին: Նույն ժամանակ Ռուսաստանում պատմաբաններ Գ. Ֆ. Միլլերը և Ի. Ե. Ֆիշերը օգտագործել են ռուս. դիվանների փաստաթղթերը Մոնղոլիայի մասին, իսկ չինագետներ Ի. Կ. Ռոսսոխինը և Ա. Լ. Լեոնտևը չինարենից և մանջուրերենից թարգմանել են Մոնղոլիայի պատմության վերաբերյալ երկեր:

Տարածքային մոտիկության և ռուս-մոնղոլական երկարատև բազմակողմանի կապերի շնորհիվ XIX դ. Ռուսաստանը դարձել է Մ-յան ճանաչված կենտրոն: Մոնղ. քերականության մասին Ի. Յա. Շմիդտի (XIX դ. սկիզբ) գործը սկզբնավորել է մոնղ. լեզվագիտությունը, և, ընդհանրապես, մոնղ. բանասիրությունը Ռուսաստանում ու Արևմտյան Եվրոպայում: Ռուսաստանում Մ-յան հիմնական ուղղություններն էին աղբյուրագիտությունը, գրական հուշարձանների հրատարակումը, բանասիրությունը, իսկ պատմության բնագավառում՝ միջնադարագիտությունը: Շմիդտի, Ս. Վ. Լիպովցևի, Պ. Ի. Կաֆարովի, Դ. Բանզարովի և ուրիշների հրապարակումները գիտության համար բացահայտեցին մոնղ. մի շարք ժամանակագրություններ և տարեգրություններ: Ն. Յա. Բիչուրինի, Ի. Ն. Բերեզինի, Ք. Պ. Պատկանյանի, Վ. Մ. Ուսպենսկու, Ն. Ի. Վեսելովսկու, Վ. Լ. Կոտվիչի և ուրիշների ուսումնասիրությունները գիտական շրջանառության մեջ դրեցին չին., հայկ. և արաբ. բազմաթիվ սկզբնաղբյուրներ, ազգագրական և հնագիտական նյութեր: Լեզվաբաններ և բանասերներ Ա. Ա. Բոբրովնիկովի, Օ. Մ. Կովալևսկու, Կ. Ֆ. Գոլստունսկու և ուրիշների աշխատությունները զգալի ներդրում էին մոնղոլական լեզուների, բանահյուսության և գրականության ուսումնասիրության գործում:

Արևմտաեվրոպական ուսումնասիրողների մեջ XIX դ. կարևոր տեղ է գրավում շվեդ. գիտնական Ա. դ'Օսսոնը, որը գրել է աշխատություն Մոնղոլիայի պատմության վերաբերյալ՝ առաջին անգամ օգտագործելով Ռաշիդ ադ Դինի «Տարեգրությունների ժողովածուն», Ջուվեյնիի երկերը, պարսկերեն, հայերեն, արաբերեն, վրացերեն և այլ լեզուներով սկզբնաղբյուրներ: Չին. աղբյուրների հիման վրա գործեր է հրապարակել ֆրանսիացի գիտնական Ա. Ռեմյուզեն: Մոնղոլների պատմության վերաբերյալ եռահատոր երկ է հրատարակել անգլ. պատմաբան Հ. Հաուորսը: XIX դ. 2-րդ կեսին լույս տեսան Ֆ. Էրդմանի (Գերմանիա), Կ. Դուգլասի և Դ. Կառաթերսի (Մեծ Բրիտանիա) աշխատությունները Մոնղոլիայի պատմության վերաբերյալ: Բուրժ. շատ մոնղոլագետների աշխատություններին բնորոշ էին օբյեկտիվիզմը, եվրոպակենտրոն միտումները և գաղութատիրության ջատագովությունը:

XIX—XX դդ. սահմանագծին համաշխարհային ճանաչում ստացան Վ. Վ. *Բարտոլդի* աշխատությունները: Նա առաջիններից էր, որ մեծ ուշադրություն դարձրեց մոնղոլների սոցիալ-տնտեսական պատմությանը: Լայն գործունեություն ծավալեցին ճանապարհորդներ Պ. Կ. Կոզլովը և Գ. Ե. Գրում-Գրժիմայլոն, երևան եկան Մոնղոլիայի էկոնոմիկայի վերաբերյալ Մ. Ի. Բոգոլեպովի և Մ. Ն. Սոբոլևի, Ա. Պ. Բոլոբանի և ուրիշների ուսումնասիրությունները: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը նոր փուլ բացեց Մ-յան մեջ: Սովետական գիտնականներ Ի. Մ. Մայսկու, Ա. Դ. Կալլիննիկովի և ուրիշների ուսումնասիրություններում քննվել են ֆեոդալական Մոնղոլիայի հասարակական-տնտեսական հարաբերությունների, ազգային-ազատագրական շարժման, 1921-ի ժող. հեղափոխության ևն խնդիրները: Բ. Յա. Վլադիմիրցովի գիրքը՝ մոնղոլների հասարակական կարգի մասին, դրեց նախահեղափոխական Մոնղոլիայի և ընդհանրապես վաչկատուն ժողովուրդների պատմության մարքսիստական ուսումնասիրության հիմքը: Մոնղ. բանահյուսության վերաբերյալ Վլադիմիրցովի աշխատությունները կան-

խորրոշեցին բանասիրական հետազոտությունների հետագա բաժանումը լեզվաբանական, տեքստաբանական և գրականագիտական բնագավառների: Ս. Ա. Կոզինը հրապարակեց XIII դ. գրական հուշարձան «Նվիրական ասք»-ի բնագիրը և ռուս. թարգմանությունը («Ասք»-ի ուսումնասիրությանը աշխատություններ են նվիրել հունգ. Լ. Լիգետին, ֆրանս. Ա. Մոստարտը և Պ. Պելլիոն, գերմ. Է. Հենիշը, մոնղ. լեզվաբան Մ. Գաադամբան, ժամանակակից մոնղ. «Նվիրական ասք»-ը հրատարակել է Ց. Դամդինսուրենը): Կոզինը ուսումնասիրել է նաև «Գեսերիական» և «Ջանգարիական» էպոսները: Ն. Պ. Շաստինան հրատարակել է մոնղ. «Շարա թուջի» և «Ալթան թոբչի» տարեգրությունների թարգմանությունը և ուսումնասիրությունը: Սովետական Մ. զարգացել է ՄԺՀ գիտ. հիմնարկների հետ սերտ համագործակցության պայմաններում: Մ-յան խնդիրներին զգալի ուշադրություն է դարձվում ՍՍՀՄ հանրապետություններում: Մ-յան խնդիրներ են ուսումնասիրել աշխարհագրագետները (Վ. Ա. Օբրուչև, Է. Մ. Մուրզաև), հնագետները (Ս. Վ. Կիսելյով, Ա. Պ. Օկլադնիկով), բանասերները (Գ. Դ. Սանժեև, Յու. Ն. Ռյորիխ, Գ. Ն. Ռումյանցև և ուրիշներ), պատմաբանները (Ա. Յու. Յակուբովսկի, Լ. Ս. Պուչկովսկի, Լ. Ն. Գումիլյով, Լ. Մ. Գատաուլինա և ուրիշներ), տնտեսագետները (Ս. Կ. Ռոշչին, Գ. Ս. Մատվեևա և ուրիշներ) ևն:

Մ-յան մեջ մեծ ավանդ ունեն մոնղ. գիտնականները: Ժող. իշխանության տարիներին նրանք կատարել են հիմնարար ուսումնասիրություններ պատմության (Բ. Շիրենդիբ, Շ. Նացագդորժ, Ն. Սեր Օջավ, Շ. Բիրա, Բ. Թուդև և ուրիշներ), տնտեսագիտության (Ն. Ժագվարալ, Դ. Դուգար), աշխարհագրության (Շ. Ցեգմիդ, Բ. Գունգադաշ), գրականության (Ց. Դամդինսուրեն, Շ. Լուվսանվանդան, Բ. Ռինչեն և ուրիշներ), արվեստի բնագավառում: Մ-յան կարևոր կենտրոններ են ՄԺՀ ԳԱ հասարակական գիտ. հաստատությունները: Ուլան Բատորում հրատարակվում է պատմաբանասիրական հուշարձանների մատենաշար («Monumenta Historica», «Studia Folklorica», «Corpus scriptorum mongolorum» ևն): Կազմակերպվում են ինքնուրույն և համատեղ (սովետական և սոցիալիստական մյուս երկրների գիտնականների հետ) արշավախմբեր: 1940-ական թթ. վերջից Մ. զարգացել է սոցիալիստական երկրներում՝ ԳԴՀ-ում (Կ. Գուբեր, Է. Տաուբե, Ռ. Բաումե), ԼԺՀ-ում (Ս. Կալուժինսկի, Մ. Լևիցկի և ուրիշներ), ՀԺՀ-ում (Լ. Լիգետի, Դ. Կարա, Ա. Ռոնա Տաշ), ՉՍՍՀ-ում (Պ. Պոուխա), այնուհետև՝ ԲԺՀ-ում և ՌՍՀ-ում: Մ-յան նվաճումները սոցիալիստական երկրներում նպաստում են համաշխարհային Մ-յան մեջ առաջավոր գիտական մեթոդաբանության հաստատմանը: Մոնղոլագետների համաշխարհային գիտաժողովները (1959, 1970, Ուլան Բատոր) հաստատեցին մարքսիստական ուղղության առաջատար դերը Մ-յան մեջ:

Բուրժ. երկրներում Մ-յան հիմնական ուղղություններն են աղբյուրագիտությունը, լեզվաբանությունը, բանասիրությունը և սկզբնաղբյուրների հրատարակումը (հիմնականում՝ ԱՄՆ-ում և ԳՖՀ-ում): Մոնղոլների պատմության, լեզվի և գրականության վերաբերյալ ուսումնասիրություններ են կատարվել ԳՖՀ-ում (Վ. Հայսսիգ), ԱՄՆ-ում (Ֆ. Լեսսինգ, Ջ. Կրյուգեր և ուրիշներ), Ճապոնիայում (Կ. Սակամոտո, Մ. Մուրակամի, Ս. Իվամուրա և ուրիշներ): 1950-ական թթ. կեսին Մեծ Բրիտանիայում և առանձնապես ԱՄՆ-ում: (Օ. Լատտիմոր, Ջ. Ֆրիտերս) ու Ճապոնիայում (Կ. Տանակա) նկատվել է զգալի հետաքրքրություն ՄԺՀ նորագույն պատմության, քաղաքականության, միջազգային դրության, տնտեսության, պետ. կառուցվածքի նկատմամբ: Սակայն այդ ուսումնասիրություններից մի քանիսն ունեն միտումնավոր բնույթ՝ առանձնապես սովետա-մոնղոլական հարաբերությունների հարցերում (Ռ. Ռուպեն, Ու. Բալլիս և ուրիշներ՝ ԱՄՆ, Ջ. Բոուդեն՝ Մեծ Բրիտանիա):

ՍՍՀՄ-ում Մ-յան կենտրոններն են Մոսկվայի արևելագիտության ինստ-ը և Լենինգրադի՝ նրա բաժանմունքը, ՍՍՀՄ ԳԱ ազգագրության, համաշխարհային սոցիալիստական սիստեմի էկոնոմիկայի, հնագիտության ինստ-ները, ՍՍՀՄ ԳԱ Սիբիրի բաժանմունքի Բուրյաթական ֆիլիալի հասարակական գիտությունների ինստ-ը Ուլան Ուդեում, Կալմիկական ԻՍՍՀ Մինիստրների խորհրդին կից լեզվի, գրականության և պատմության ինստ-ը Էլիստայում, ՍՍՀՄ ԳԱ Սիբիրի բաժանմունքի պատմության, գրականության և փիլիսոփայության ինստ-ը Նովոսիբիրսկում: Մոնղոլագիտական կադրեր պատրաստում են Մոսկվայի համալսարանին կից Ասիայի և Աֆրիկայի ինստ-ը, միջազգային հարաբերությունների ինստ-ը, Լենինգրադի համալսարանի արևելագիտության ֆակուլտետը, Իրկուտսկի համալսարանը: Սոցիալիստական երկրներում Մ-յան կենտրոններն են՝ ՄԺՀ ԳԱ պատմության, լեզվի և գրականության, փիլիսոփայության, հասարակագիտության և իրավունքի ինստ-ները, ԲԺՀ, ԳԴՀ, ԼԺՀ, ՀԺՀ արևելագիտական կենտրոնները, Ուլան Բատորի, Բուդապեշտի, Բեռլինի, Վարշավայի համալսարանները: ՍՍՀՄ-ում Մ-յան հարցերը լուսաբանվում են «Народы Азии и Африки», «Проблемы Дальнего Востока», «Азия и Африка сегодня» և այլ ամսագրերում ու պարբերականներում, սոցիալիստական երկրներում՝ «БНМАУ-ын Шинжлэх ухааны академийн мэдээ» (Ուլան Բատոր, 1961-ից), «Эдийн засгийн асуудал» (Ուլան Բատոր, 1956-ից), «Acta Orientalia...» (Բուդապեշտ, 1950-ից), «Novy Orient» (Պրագա, 1945-ից), «Rosznik orientalistyczny» (Կրակով, 1914-ից): Կապիտալիստական երկրներում Մ-յամբ զբաղվում են ԱՄՆ-ի, Ինդիանայի, Կոլումբիայի, Հարվարդի, Մեծ Բրիտանիայում՝ Լիդսի, Ֆրանսիայում՝ Փարիզի, ԳՖՀ-ում՝ Բոննի, Մյունխենի, Վիսբադենի, Դանիայում՝ Կոպենհագենի, Ճապոնիայում՝ Տոկիոյի, Օսակայի, Կիոտոյի համալսարաններում և այլուր: Մ-յան հարցերը լուսաբանվում են «Journal Asiatique» (P., 1822-ից) և այլ պարբերականներում:

Մ-յան համար կարևոր են XIII դ. հայ մատենագիրների (Վանական Վարդապետ, Կիրակոս Գանձակեցի, Վարդան Արևելցի, Գրիգոր Ակներցի, Ստեփանոս Օրբելյան, Սմբատ Գունդստաբլ, Հեթում Պատմիչ) տեղեկությունները և հայ պատմաբանների (Մ. Չամչյան, Ղ. Ալիշան, Ք. Պատկանյան, Լեո, Հ. Մանանդյան, Լ. Խաչիկյան, Ս. Երեմյան, Լ. Բաբայան և ուրիշներ) ուսումնասիրությունները՝ մոնղոլների պատմության, Մերձավոր և Միջին Արևելքի ժողովուրդների հետ մոնղոլների փոխհարաբերությունների վերաբերյալ:

*Գրկ.* Бартольд В. В., История изучения Востока в Европе и России, 2 изд., Л., 1925; Шастина Н. П., История изучения Монгольской Народной Республики (краткий очерк), в кн.: Монгольская Народная Республика, М., 1952; Նույնի, Изучение истории Монголии после Октября, «Народы Азии и Африки», 1967, № 4; Герасимович Л. К., Литература Монгольской Народной Республики 1921—1964 годов, Л., 1965; Михайлов Г. И., Литературное наследство монголов, М., 1969; Востоковедение в Ленинградском университете, «Уч. зап. ЛГУ, Сер. востоковедческих наук», 1960, № 296, в. 13; Востоковедные фонды крупнейших библиотек Советского Союза, М., 1963.

**ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԱԼԹԱՅ**, լեռնային համակարգ ՄԺՀ-ում և Չինաստանում: Ձգվում է հս-արմ-ից հվ-արլ. մոտ 1000 *կմ*, լայնությունը՝ 150—300 *կմ*: Առավելագույն բարձրությունը 4362 *մ* է (Մունխ Խայրխան ուլա լեռ): Բաղկացած է տեկտոնական հովիտներով մասնատված մի քանի զուգահեռ լեռնաշղթաներից: Գագաթները սարավանդաձև են, կատարային մասերում կան կառային և կախված սառցադաշտեր (ամենամեծը Պոտանինի սառցադաշտն է): Կազմված է բյուրեղային թերթաքարերից, պորֆիրներից, պորֆիրիտներից և գրանիտներից: Նախալեռներում տարածված են կիսաանապատներն ու անապատները, ավելի բարձր՝ լեռնային տափաստանները, հս. լանջերին՝ փշատերև անտառները:




**ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ** (Бугд Найрамдах Монгол Ард Улс), **ՄԺՀ** (БНМАУ)

Բովանդակություն

**I. Ընդհանուր տեղեկություններ**

ՄԺՀ պետություն է Կենտրոնական Ասիայում: Սահմանակից է ՍՍՀՄ-ին և ՉԺՀ-ին: Տարածությունը 1565 հզ. *կմ*² է, բնակչությունը՝ 1,64 մլն (1979): Մայրաքաղաքը՝ Ուլան Բատոր: Վարչականորեն բաժանված է 18 այմակների, առանձին վարչական միավորներ են Ուլան Բատոր և Դարխան քաղաքները:

Քարտեզները տես 681-րդ էջից առաջ՝ ներդիրում:

**II. Պետական կարգը**

ՄԺՀ սոցիալիստական պետություն է, ժող. հանրապետություն: Գործող սահմանադրությունն ընդունվել է 1960-ին: Պետ. իշխանության բարձրագույն և օրենսդրական մարմինը Ժողովրդական մեծ խուրալն է, որը հաստատում է սահմանադրությունը, սահմանում արտաքին և ներքին քաղաքականության հիմնական սկզբունքները, հաստատում ժողովրդատնտեսական պլանը, պետ. բյուջեն ևն: Ժողովրդական մեծ խուրալի նստաշրջանների միջև ընկած ժամանակահատվածում պետ. իշխանության բարձրագույն մարմինը նրա նախագահությունն է: Հանրապետության բարձրագույն գործադիր և կարգադրիչ մարմինը կառավարությունն է՝ մինիստրների խորհուրդը: Իշխանության տեղական մարմինները այմակների, քաղաքների, քաղաքային շրջանների դեպուտատների խուրալներն են: Ընտրական իրավունքից օգտվում են 18 տարին լրացրած բոլոր քաղաքացիները: Դատական համակարգի մեջ մտնում են՝ գերագույն դատարանը, այմակային և քաղաքային, հատուկ (զինծառայողների քրեական գործերով), այմակային արտագնա և շրջանային դատարանները: ՄԺՀ-ի դատախազին նշանակում է Ժողովրդական մեծ խուրալը:

**III. Բնությունը**

ՄԺՀ գտնվում է Կենտրոնական Ասիայի հս-արլ-ում, բարեխառն գոտու տափաստանային, կիսաանապատային և անապատային զոնաներում: Տարածության մեծ մասը գտնվում է 1000—2000 *մ* բարձրության վրա: Արմ-ում և հս-արմ-ում գերակշռում են լեռները, արլ-ում՝ բարձր հարթավայրերը: Ամենամեծ լեռնաշղթաներն են 1000 *կմ* ձգվող Մոնղոլական Ալթայը (առավելագույն բարձրությունը՝ 4362 *մ*, Մունխ Խայրխան ուլա լեռ), Խանգայը և Գոբիական Ալթայը: ՄԺՀ կենտրոնական մասում է Խենտեյ բարձրավանդակը: Հվ-ում և հվ-արլ-ում ՄԺՀ սահման է մտնում Գոբի անապատի մի մասը, որի հվ-արլ-ում է գտնվում Դարիգանգա հրաբխային մարզը: Հս-ում և հս-արմ-ում կան մի շարք համեմատաբար խոր, ընդարձակ միջլեռնային գոգավորություններ և հովիտներ, որոնցից նշանակալի են Մեծ լճերի գոգավորությունը, Լճերի հովիտը, Օրխոն և Սելենգա գետերի իջվածքային հովիտները: Գոբիի հվ-ում և հվ-արլ-ում, ինչպես նաև Մեծ լճերի գոգավորություններում կան ավազապատ (մոտ 30 հզ. *կմ*²) տարածություններ:

ՄԺՀ տարածքը մտնում է Կենտրոնաասիական համակարգի մեջ՝ Ուրալա-Մոնղոլական ծալքավոր գեոսինկլինալային գոտու մասն է: Նրա սահմաններում առանձնանում են հ յ ո ւ ս ի ս ա յ ի ն՝ կալեդոնյան, և հ ա ր ա վ ա յ ի ն՝ հերցինյան ծալքավորության մարզերը: Օգտակար հանածոներից հայտնի են քարածխի, երկաթի, վոլֆրամի, պղնձի, մոլիբդենի, ֆլյուորիտի, ֆոսֆորիտների, ոսկու, անագի, ցինկի, պիեզոքվարցի, ասբեստի, գիպսի, գրանիտի հանքավայրերը:

Կ լ ի մ ա ն բարեխառն է, չոր, խիստ ցամաքային՝ օդի օրական և սեզոնային ջերմաստիճանների մեծ տատանումներով: Ձմեռը ցուրտ է, սակավաձյուն, արևոտ: Հունվարի միջին ջերմաստիճանը հս-ում —35°C է (նվազագույնը՝ մինչև —50°C), հվ-ում՝ —10°C: Ամառը կարճ է, տաք: Հուլիսի միջին ջերմաստիճանը 18—26°C է (առավելագույնը՝ մինչև 40°C): Տարեկան տեղումները հս-ում 200—300 *մմ* են, ծայր հվ-ում՝ 100 *մմ*-ից պակաս, լեռներում՝ մինչև 500 *մմ*: Մոնղոլական Ալթայում կան սառցադաշտեր, երկրի հս-ում՝ բազմամյա սառածություն (կղզյակներով):

**Ներքին ջրերը**: Խոշոր գետերն են Սելենգան (Հյուսիսային սառուցյալ օվկիանոսի ավազան), Կերուլենն ու Օնոնը (Խաղաղ օվկիանոսի ավազան): Տարեկան ընդհանուր հոսքը մոտ 30 *կմ*³ է: Գետերի սնումը գլխավորապես անձրևային ու ձնային է, վարարումը՝ գարնանն ու ամռանը: Մեծ լճերն են՝ աղի, անհոսք Ուբսու նուր (մակերեսը 3350 *կմ*²) և Խյարգաս նուր, քաղցրահամ, հոսքավոր Խուբսուգուլ (2620 *կմ*²) և Խարա Ուս նուր:

**Հողերը, բուսական և կենդանական աշխարհը**: Տարածված են շագանակագույն և գորշ հողերը, լեռներում հանդիպում են սևահողեր, գետահովիտներում և լճային գոգավորություններում՝ մարգագետնային հողեր: ՄԺՀ կենտրոնական և արլ. մասերում գերակշռում է տափաստանային բուսականությունը (փետրախոտ, շյուղախոտ), Գոբի անապատում՝ օշինդրը, ուղտափուշը, սաքսաուլը: Անտառները (տարածված են գլխավորապես լեռներում) զբաղեցնում են երկրի տարածքի 10%-ը:

Կենդանիներից բնորոշ են կրծողները, այծքաղը, Պրժևալսկու ձին, վիթը, կուլանը, վայրի ուղտը: Անտառներում հանդիպում են սամույր, վարազ, սկյուռ, գորշ արջ, մարալ, որմզդեղն:

**IV. Բնակչությունը**

Ավելի քան 90%-ը *մոնղոլներ* են (1979), բնակվում են նաև ղազախներ, բուրյաթներ, տուվացիներ, չինացիներ և այլք: Միջին խտությունը 1 *կմ*² վրա 1 մարդ է (1979), քաղաքային բնակչությունը՝ մոտ 50%: ՄԺՀ-ում բարձր է բնակչության բնական աճը (3,1%): Պետ. լեզուն մոնղոլերենն է, կրոնը՝ բուդդայականությունը (լամայականությունը), տոմարը՝ գրիգորյանը: Խոշոր քաղաքներն են Ուլան Բատորը, Դարխանը, Չոյբալսանը, Կոբդոն:

**V. Պատմական ակնարկ**

Մոնղոլիայի տարածքում մարդու բնակության ամենավաղ հետքերը ստորին քարի դարից են (մոտ 200—100 հզ. տարի առաջ): Մ. թ. ա. I հազարամյակում մոնղ. ցեղերն անցել են քոչվոր անասնապահության: Մ. թ. ա. IV—III դդ. սաղմնավորվել են մասնավոր սեփականությունը, ապրանքափոխանակությունը, առաջացել են ցեղային միություններ, սկսել է քայքայվել նախնադարյան համայնական կարգն ու սկզբնավորվել ֆեոդալական հասարակարգը: ՄԺՀ տարածքում առաջին ցեղային միությունը եղել է նախամոնղոլական հ ու ն ն ու ցեղերի միությունը (մ. թ. ա. III—մ. թ. I դդ.), որին հաջորդել է ս յ ա ն բ ի ցեղերի միությունը: Ֆեոդալականացման ընթացքը հետագա զարգացում է ապրել IV—X դդ.՝ Ժուժանական, Թյուրքական, Ույղուրական, Կիրգիզական խաքանություններում, ապա Լյաո կայսրությունում (կիդանիների պետություն, X—XII դդ.), որը, բացի Մոնղոլիայից, ընդգրկում էր նաև Չինաստանի մի մասը: Լյաո կայսրության կործանումով (1125) սկիզբ է դրվել բուն մոնղ. իշխանությունների ու խանությունների կազմավորմանը, որտեղ արտադրության հիմնական միջոցը՝ հողը, փաստորեն դարձել է ֆեոդալականացող վերնախավի՝ նոյոնության, մոնոպոլ սեփականությունը, իսկ անմիջական արտադրողները՝ արաթները (քոչվոր անասնապահներ), որոշակիորեն վերածվել են կախյալ դասի: Անհրաժեշտ էր ստեղծել կենտրոնացված ուժեղ պետություն, որն ամրապնդեր ֆեոդալական հարաբերությունները և օրենքի ուժ տար դրանց: XII դ. վերջին — XIII դ. սկզբին նոյոն Թեմուչինը հաղթեց իշխանության համար պայքարում և 1206-ին մոնղ. նոյոնների մեծ դուրուլթայում (համագումար) հռչակվեց մեծ խան՝ *Չինգիզ խան* (1206—27): Նրա օրոք հողը դարձավ պետության (ի դեմս մեծ խանի) սեփականություն, ստեղծվեց կենտրոնական հրամանատարություն ունեցող մեծ բանակ, որի մեջ ընդգրկվեցին համարյա բոլոր տղամարդիկ: Ֆեոդալիզմի հաստատումը ուղեկցվում էր մոնղ. միասնական ազգության ձևավորմամբ: Պաշտպանելով նոյոնների շահերը, ռազմաֆեոդալական պետությունն սկսեց իրագործել նվաճողական քաղաքականություն: Արդեն XIII դ. կեսին նվաճվել էին Հյուսիսային Չինաստանը, Միջին Ասիան, Իրանը, Անդրկովկասը, Հայաստանը, Ռուսիան, իսկ 1470-ական թթ.՝ ամբողջ Չինաստանը: Ստեղծվեց մոնղ. ֆեոդալական կայսրությունը, որը, սակայն, չունենալով միասնական տնտ. բազա և բզկտվելով ներքին հակասություններից՝ անկում ապրեց, իսկ XIV դ. վերջին քառորդին դադարեց գոյություն ունենալուց (տես *Մոնղոլական նվաճումներ*): Վաղ ֆեոդալական պետության փլատակների վրա ստեղծվեցին բազմաթիվ խանություններ ու իշխանություններ: XV—XVI դդ. երկու անգամ փորձ արվեց վերականգնել

մոնղ. միացյալ պետությունը, սակայն երկու անգամ էլ նրա տիրակալների [Էսեն խան (1440—55) և Դայան խան (մոտ 1479— մոտ 1543)] մահից հետո այն քայքայվեց: Մոնղոլիան բաժանվեց երկու մասի՝ Հարավային և Հյուսիսային, որոնց միջև սահման դարձավ Գոբի անապատը: Շուտով Հյուսիսային Մոնղոլիան ևս բաժանվեց երկու մասի՝ Արևմտյան (օյրաթական) և Արևելյան (խալխայան): XVI դ. վերջին — XVII դ. սկզբին մոնղոլները որպես կրոն ընդունեցին *լամայականությունը*: XVII դ. սկզբին ներկայիս Չինաստանի հս-արլ. մասում պետություն ստեղծած մանջուրական ֆեոդալները 1636-ին նվաճեցին Հարավային Մոնղոլիան և այն սկսեցին անվանել Ներքին Մոնղոլիա, ի տարբերություն Խալխայան Մոնղոլիայի (ՄԺՀ ներկայիս տարածքը), որն անվանեցին Արտաքին Մոնղոլիա: 1691-ին մանջուրական *Ցին* դինաստիայի (1644—1911, հիմնադրվել է Չինաստանը նվաճելուց հետո) իշխանության տակ անցավ Խալխայան Մոնղոլիան: XVIII դ. կեսին մանջուրները նվաճեցին մոնղ. վերջին անկախ իշխանությունը՝ Օյրաթական խանությունը (ստեղծվել էր XVII դ. 30-ական թթ.): Ցին տիրակալները արգելում էին մոնղոլներին կապ հաստատել արտաքին աշխարհի, մանավանդ՝ ռուս վաճառականների հետ:

XIX դ. վերջին — XX դ. սկզբին Մոնղոլիան դարձավ միջիմպերիալիստական պայքարի օբյեկտ: Գլխավոր մրցակիցներն էին Ճապոնիան, Ռուսաստանը, Մոնղոլիայի նկատմամբ հետաքրքրություն էին ցուցաբերում նաև Մեծ Բրիտանիան, ԱՄՆ, Գերմանիան: Ցին դինաստիան սկըսեց Մոնղոլիայի լայն գաղութացումը, որն առաջացրեց կրկնակի ճնշման ենթարկվող արաթների և իր իշխող դիրքը կորցնող նոյոնության դիմադրությունը: Մանջուրական տիրապետության տապալումը դարձել էր համազգային խնդիր: 1905—1907-ի ռուս. հեղափոխությունը և հեղափոխական շարժումների աճը Չինաստանում նպաստեցին հեղափոխական իրադրության զարգացմանը Մոնղոլիայում: 1911-ին Ուրգայում (այժմ՝ Ուլան Բատոր) հայտարարվեց Ցին դինաստիայի տապալումը և մոնղ. անկախ պետության ստեղծումը՝ բոգդո գեգենի (հոգևոր պետ) գըլխավորությամբ: Սակայն ոչ մի պետություն չճանաչեց Մոնղոլիայի ինքնուրույնությունը, և այն 3 տարի հետո հարկադրված համաձայնեց մնալ Չինաստանի կազմում՝ որպես ինքնավար տարածք:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը Ռուսաստանում մեծապես նպաստեց ազգայինազատագրական շարժմանը Մոնղոլիայում: Սակայն հետադեմ նոյոնությունը փակեց Ռուսաստանի հետ սահմանը, համաձայնեց վերացնել ինքնավարությունը, երկիրը տրամադրեց սպիտակգվարդիականներին և ճապոնական զավթիչներին: 1920-ին ստեղծվեց մոնղ. ժող. կուսակցությունը [1921-ին, I համագումարում, վերանվանվեց մոնղ. ժողովրդահեղափոխական կուսակցություն (ՄԺՀԿ)], որը գըլխավորեց ժող. հեղափոխությունը (տես *Մոնղոլական ժողովրդական հեղափոխություն 1921*): Կարճ ժամանակում ստեղծվեց Մոնղոլական ժողովրդահեղափոխական բանակ՝ Դ. *Սուխե Բատորի* և Խ. *Չոյբալսանի* գլխավորությամբ, որը կարմիր բանակի զորամասերի օգնությամբ 1921-ի հուլիսի 10-ին ազատագրեց Ուրգան և իշխանությունը հանձնեց ժող. կառավարությանը: Նույն թվականին Մոսկվայում ստորագրվեց սովետա-մոնղոլական բարեկամության համաձայնագիր: ՄԺՀԿ III համագումարը (1924) ընտրեց երկրի ոչ կապիտալիստական զարգացման ուղի, իսկ Ժողովրդական մեծ խուրալը (ժողովը) Մոնղոլիան հռչակեց ժող. հանրապետություն և հաստատեց ՄԺՀ առաջին սահմանադրությունը: Ստանալով սովետական պետության օգնությունը, ժող. կառավարությունն իրականացրեց լայն վերափոխումներ: Երկրի տնտեսությունից վերջնականապես դուրս մղվեց արտասահմանյան կապիտալը, 1930—40-ական թթ. ստեղծվեց պետ. և կոոպերատիվ արդյունաբերություն, զարգացավ ավտոմոբիլային, երկաթուղային տրանսպորտը ևն: 1936-ին կնքվեց սովետա-մոնղոլական փոխադարձ օգնության համաձայնագիր: 1939 թվականին ճապոնական զորքերը ներխուժեցին ՄԺՀ տարածքը Խալխինգոլի շրջանում, սակայն զավթիչները ջախջախիչ հարված ստացան մոնղոլա-սովետական զորքերից:

Հեղափոխական վերափոխումների հետևանքով էապես փոխվեց ՄԺՀ սոցիալական կառուցվածքը, ձևավորվեց ազգային բանվոր դասակարգը, աշխատավոր մտավորականությունը: ՄԺՀԿ X համագումարը (1940) ընդունեց կուսակցության նոր ծրագիր, իսկ Ժողովրդական մեծ խուրալը (8-րդ)՝ նոր սահմանադրություն: ՄԺՀ թևակոխեց զարգացման նոր՝ սոցիալիստական փուլ, որի ընթացքում ամրապնդվեց նրա միջազգային հեղինակությունը: 1948-ին ՄԺՀ սկսեց դիվանագիտական հարաբերություններ հաստատել սոցիալիստական պետությունների հետ, միաժամանակ մտնելով տնտ. և մշակութային համագործակցության մեջ: Ետպատերազմյան շրջանը ՄԺՀ-ում նշանավորվեց սոցիալիստական շինարարության խոշոր նվաճումներով, բանվոր դասակարգը դարձավ նոր հասարակության ստեղծման առաջավոր ուժ, արաթները մտան գյուղատնտ. կոլեկտիվ միավորումների մեջ: Մոնղոլ ժողովրդի պատմական հաղթանակը արտացոլեց 1960-ի նոր սահմանադրությունը:

ՄԺՀ-ի արտաքին քաղաքականությունն ուղղված է սոցիալիստական շինարարության համար խաղաղ պայմանների ապահովմանը:

ՄԺՀ ՄԱԿ-ի անդամ է 1961-ից, ՏՓԽ-ի անդամ՝ 1962-ից:

**VI. Քաղաքական կուսակցությունները, արհմիությունները և հասարակական այլ կազմակերպություններ**

Մոնղոլական ժողովրդահեղափոխական կուսակցություն (ՄԺՀԿ), կազմակերպչորեն ձևավորվել է 1921-ի մարտին՝ ՄԺՀԿ I համագումարում, մինչև 1925-ը կոչվել է մոնղ. ժող. կուսակցություն. ունի ավելի քան 70 հզ. կուսանդամ և անդամության թեկնածու (1980-ի հունվար):



Տեսարան Դարխանից

ՄԺՀ-ի արհեստակցական միությունները հիմնվել են 1927-ին, ունեն ավելի քան 300 հզ. անդամ, մտնում են ԱՀՖ-ի մեջ:

Մոնղոլական հեղափոխական երիտասարդական միություն (ՄՀԵՄ), ստեղծվել է 1921-ին, ունի ավելի քան 170 հզ. անդամ: Մոնղոլա-սովետական բարեկամության ընկերություն, ստեղծվել է 1947-ին:

**VII. Տնտեսա-աշխարհագրական ակնարկ**

1921-ի ժող. հեղափոխությունից հետո, ժող. իշխանության տարիներին, նախկին հետամնաց ագրարային ֆեոդալական երկիրը վերածվեց արագ զարգացող սոցիալիստական ագրարային ինդուստրիալ պետության:

ՄԺՀ-ում սոցիալիստական բազայի ստեղծման գործում հսկայական դեր է խաղացել լայն համագործակցությունը ՍՍՀՄ-ի, ապա նաև սոցիալիստական մյուս երկրների հետ՝ ՏՓԽ-ի շրջանակներում: Նրանց օգնությամբ ՄԺՀ-ում կառուցվել են խոշոր էլեկտրակայաններ Ուլան Բատորում և Դարխանում (ՍՍՀՄ), Ուլեգեյում (ՉՍՍՀ), Խարխորինում (ՄԺՀ), ածխային հանքահորեր՝ Շարինգոլում, Նալայխայում (ՍՍՀՄ), ավտոնորոգման գործարան՝ Ուլան Բատորում (ՍՍՀՄ), փայտամշակման և տնաշինական կոմբինատներ՝ Ուլան Բատորում (ՍՍՀՄ), ցեմենտի գործարան՝ Դարխանում (ՉՍՍՀ), կարի գործարան (ՀԺՀ) ևն: 1979-ին ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները կազմել են 2,7 մլրդ տուղրիկ:

Գյուղատնտեսությունը տընտեսության առաջատար ճյուղն է: Սոցիալտնտեսական արմատական վերափոխումների հետևանքով գյուղատնտեսության մեջ ամբողջությամբ տիրապետում են սոցիալիստական արտադրահարաբերությունները: Գոյություն ունեն սոցիալիստական սեփականության երկու ձև՝ կոոպերատիվ (գյուղատնտ. միավորումներ) և պետ. (պետ. տնտեսություններ): 1972-ին կոոպերատիվ սեկտորին էր պատկանում ցանքատարածությունների 24,6%-ը, արոտավայրերի 95%-ը, անասունների գըլխաքանակի 75%-ը, պետ. սեկտորին՝ ցանքատարածությունների 75,4%-ը, արո-

տավայրերի 3%-ը, անասունների գլխաքանակի 4%-ը և հացահատիկի համախառն արտադրանքի 4/5-ը, ինչպես նաև կարտոֆիլի, բանջարեղենի և կերային կուլտուրաների զգալի մասը:

Գյուղատնտ. համախառն արտադրանքի 79%-ը տալիս է անասնապահությունը (1979): Մեկ շնչին ընկնող անասունների գլխաքանակով ՄԺՀ աշխարհում գրավում է առաջին տեղերից մեկը: Անասնապահության առաջատար ճյուղը ամենուրեք զարգացած ոչխարաբուծությունն է (14,1 մլն գլուխ, 1978) և ձիաբուծությունը (2 մլն ձի): Խոշոր եղջերավոր անասնապահությունը (2482 հզ. գլուխ) զարգացած է հս-արլ. և հս. այմակներում, խոզաբուծությունը (28,5 հզ. գլուխ) և թռչնաբուծությունը՝ խոշոր քաղաքների շրջակայքում, ուղտաբուծությունը՝ հվ. և հվ-արլ. շրջաններում: Լեռնային շրջաններում բուծում են յակեր: Կան գազանաբուծական տնտեսություններ:


Արոտավայրերում

Խամ ու խոպան հողերի յուրացման շնորհիվ ցանքատարածություններն ատիճանաբար աճում են և ներկայումս կազմում են 0,8 մլն *հա*: 1976—78-ին իրացվել են 250 հզ. *հա* խոպան հողեր: Ցանքատարածությունների 88,4%-ը զբաղեցնում են հացահատիկային և ընդավոր կուլտուրաները, 10,7%-ը՝ ցանովի խոտերը, 0,6%-ը՝ կարտոֆիլը, 0,3%-ը՝ բանջարեղենը: 1978-ին հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը կազմել է 378 հզ. *տ*:

**Արդյունաբերությունը**: Ինդուստրացման ընթացքում դրվեցին թեթև և սննդի արդյունաբերության հիմքերը, 1940—1960-ական թթ. ավանդական ճյուղերին զուգընթաց սկսեց զարգանալ նաև ծանր

ՋԷԿ-ի մեքենասրահում




Շարինգոլի ածխահանքում

արդյունաբերությունը (լեռնահանքային, էներգետիկական, փայտամշակման, շինանյութերի արտադրության, մետաղամշակման ճյուղերը):

Արդյունահանող արդյունաբերության գլխավոր ճյուղը ածխի հանույթն է (3,8 մլն *տ*, 1978): Ածխի հանույթը հիմնականում կատարվում է Շարինգոլի ածխի հատվածքում, Նալայխա հանքահորում և Ադուչչոնի ածխի բաց հանքում: 1978-ին արտադրվել է 1,2 մլրդ *կվտ·ժ* էլեկտրաէներգիա: Խոշորագույնը Դարխանի ՋԷԿ-ն է, որն աշխատում է Շարինգոլի ածխով: Արդյունահանվում են նաև վոլֆրամ, ֆլյուորիտ, պղինձ, մոլիբդեն: Սննդի և թեթև արդյունաբերությանը բաժին է ընկնում արդյունաբերության համախառն արտադրանքի $\frac{1}{2}$-ը: Թեթև արդյունաբերության խոշոր ձեռնարկությունը Ուլան Բատորի արդ. կոմբինատն է՝ կաշվի, նուրբ կաշվի, կոշիկի, նուրբ բրդյա գործվածքների և այլ ձեռնարկություններով: Ուլան Բատորում և Չոյբալսանում կան մսի կոմբինատներ, Ուլան Բատորում և Սուխե Բատորում՝ ալրաղացներ, փայտամշակման ձեռնարկություններ: Շինանյութերի արդյունաբերության խոշոր ձեռնարկությունը Ուլան Բատորի տնաշինական կոմբինատն է: Ցեմենտի և աղյուսի գործարաններ կան Դարխանում: Կա նաև պոլիգրաֆարդյունաբերություն, զորգերի, ապակու, հախճապակու արտադրություն:

**Տրանսպորտը**: Բեռնաշրջանառության 3/4-ը բաժին է ընկնում երկաթուղային տրանսպորտին: Երկաթուղիների ընդհանուր երկարությունը 1400 *կմ* է: Գլխավոր մայրուղին Անդրմոնղոլական երկաթուղին է: Ավտոճանապարհների (այդ թվում՝ կոշտ ծածկով) երկարությունը մոտ 47 հզ. *կմ* է: Խուպսուգուլ լճում, Սելենգա և Օրխոն գետերում կա նավագնացություն, Ուլան Բատորում՝ միջազգային օդանավակայան:

**Արտաքին առևտուրը**: ՄԺՀ հիմնականում արտահանում է մսատու անասուն, միս, մսամթերքներ, բուրդ, կաշի, կաշվե ապրանքներ, լեռնահանքային արդյունաբերության արտադրանք: Ներմուծում է մեքենաներ և սարքավորում, նավթամթերքներ, սև մետաղներ, պարեն, քիմ., լայն սպառման արդ. ապրանքներ:

Դրամական միավորը տուղրիկն է: 100 տուղրիկը = է 22,5 ռուբլու (1979):

**VIII. Զինված ուժերը**

ՄԺՀ-ի զինված ուժերը (Մոնղ. ժող. բանակ, ՄԺԲ) կազմված են ցամաքային, ՀՕՊ-ի և սահմանապահ զորքերից: Բանակի ղեկավարությունն իրականացնում է պաշտպանության մինիստրը: Համալրվում է համընդհանուր զինապարտության օրենքի հիման վրա: Ծառայության ժամկետը 3 տարի է, զինակոչության հասակը՝ 19 տարեկանը: ՄԺԲ ունի տարբեր կարգի հրթիռներ, ժամանակակից ռազմ. տեխնիկա: ՄԺԲ-ի առաջին կանոնավոր զորամասերն ստեղծվել են 1921-ին: Մարտի 18-ը համարվում է ՄԺԲ-ի ստեղծման օրը [1921-ի մարտի 18-ին մոնղ. զորքերը առաջին խոշոր հաղթանակը տարան չինական զավթիչների դեմ՝ ազատագրելով Մայմաչեն (այժմ՝ Ալթան Բուլակ) քաղաքը]:

**IX. Բժշկա-աշխարհագրական բնութագիրը**

1979-ին ծնունդը կազմել է 1000 բնակչին 37,2, ընդհանուր մահացությունը՝ 9,5, մանկական մահացությունը (1970) 1000 ողջ ծնվածին՝ 73,4: Տղամարդկանց կյանքի միջին տևողությունը 62,3, կանանցը՝ 66,33 տարի է (1979): Ժող. իշխանության տարիներին խիստ նվազել են վարակիչ հիվանդությունները: Լրիվ վերացվել են բնական ծաղիկը, ժանտախտը, բծավոր և ետադարձ տիֆերը: Եզակի են սիբիրյան խոցով, կատաղությամբ, տրախոմայով և ուղեղ-ողնուղեղային մենինգիտով հիվանդանալու դեպքերը:

Առողջապահության համակարգը պետական է, բուժօգնությունը՝ ձրի: 1979-ին գործել են ավելի քան 396 հիվանդանոցային հիմնարկ՝ 17,2 հզ. մահճակալով (1000 բնակչին՝ 10,5 մահճակալ), 1979-ին՝ ամբուլատոր-պոլիկլինիկական 400 հիմնարկ: 1980-ին աշխատել են մոտ 3,6 հզ. բժիշկ (1000 բնակչին՝ 2,2 բժիշկ), 93 ատամնաբույժ, 700 դեղագործ և շուրջ 8 հզ. միջին բուժաշխատող: Բժշկ. կադրեր են պատրաստում մոնղ. պետական բժշկ. ինստ-ը, միջին բուժաշխատողներ՝ բժշկ. 4 տեխնիկումները և բուժքույրական 4 դպրոցները: ՄԺՀ հարուստ է հանքային աղբյուրներով (արշաններ), ուր գործում են «Ժանչիբլին», «Խուջիրտ», «Գուրվան նուր», «Օտգոն Տենգեր» առողջարանները:

**X. Ժողովրդական կրթությունը**

Նախահեղափոխական Մոնղոլիայում գրագետների թիվը բնակչության նույնիսկ 1%-ն էլ չէր կազմում: Բուդդայական մենաստաններին կից միայն գործում էին կրոնական ուս. հաստատություններ՝ դացաններ: Ժող. հեղափոխությունից (1921) հետո ստեղծվել է ժողկրթության պետ. համակարգ (ձրի, պարտադիր, երկսեռ ուսուցում), բացվել են տարրական դպրոցներ (ուսուցումը՝ մայրենի լեզվով): Մեծ ուշադրություն է դարձվել մեծահասակների անգրագիտության վերացմանը: 1941-ին ընդունվել է նոր այբուբեն (սլավոնական գրի հիման վրա): 1966-ին խնդիր է դրվել անցնել համընդհանուր ոչ լրիվ, ապա նաև լրիվ միջնակարգ կրթության: 1972/73 ուս. տարվանից միջնակարգ դպրոցի նոր ծրագրի համաձայն ուս. տևողությունը տարրական դպրոցում 2, ոչ լրիվ միջնակարգում՝ 8, լրիվ

միջնակարգում՝ 10 տարի է: 1964-ին հիմնվել է պրոֆտեխկրթության համակարգ: Բացվել են նաև միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություններ:

ՄԺՀ-ում առաջին բուհը՝ ուսուցչական ինստ., կազմակերպվել է 1940-ին, Ուլան Բատորում, 1942-ին ՍՍՀՄ-ի օժանդակությամբ հիմնադրվել է մոնղ. պետ. համալսարանը: 1969-ին ՅՈՒՆԵՍԿՕ-ի աջակցությամբ համալսարանին կից ստեղծվել է պոլիտեխնիկական ինստ.: Ունի մանկավարժական (1951), գյուղատնտ. (1958), բժշկ. (1961) ևն ինստ-ներ (բոլորն էլ՝ Ուլան Բատորում): Մեծ թվով մասնագետներ են պատրաստվում ՍՍՀՄ-ի (նաև Հայկ. ՍՍՀ-ի) բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուս. հաստատություններում:



Ուսանողները քիմիական լաբորատորիայում

Ուլան Բատորում են գտնվում Պետ. հանրային գրադարանը (1921, 1 մլն գիրք), Պետ. կենտրոնական, Վ. Ի. Լենինի, Հեղափոխության կենտրոնական, Կրոնի պատմության, Կերպարվեստի և այլ թանգարաններ:

**XI. Գիտությունը և գիտական հիմնարկները**

**1. Բնական և տեխնիկական գիտությունները**

Ֆեոդալական Մոնղոլիայում բնագիտական գիտելիքները հիմնականում կուտակվել են աստղագիտության, բժշկության և գյուղատնտեսության բնագավառներում: Ժող. իշխանության տարիներին գիտությունը ՄԺՀ-ում հասել է զգալի հաջողությունների: 1921-ից կապեր են հաստատվել սովետական գիտնականների հետ, 1929-ին ՍՍՀՄ ԳԱ և ՄԺՀ Գիտությունների կոմիտեի միջև կնքվել է համագործակցության համաձայնագիր: 1950—60-ական թթ. զարգացում են ապրել գյուղատնտ. գիտությունները: Կենդանաբանության և բուսաբանության ասպարեզներում կատարվող ուսումնասիրությունները վերաբերում են կենդանիների մթերատվության բարձրացմանը, ցեղերի բարելավմանը, կենդանիների հիվանդությունների բուժմանն ու կանխարգելմանը, կերային պաշարների արդյունավետ օգտագործմանը, երկրագործության առաջավոր համակարգի մշակմանը: ՄԺՀ ԳԱ թղթակից անդամ Տ. Այուրզանի ղեկավարությամբ բուծվել է օրխոնյան մաքրդատու կիսանրբագեղմ ոչխարների նոր ցեղ: Գոբիի շրջանում կլիմայավարժեցնում են կարակուլյան ոչխարներ: ՄԺՀ-ի անասնապահության առաջընթացին էապես նպաստել են ակադեմիկոս Յ. Տոյվզոյի աշխատանքները: Ուսումնասիրվում են ուղտաբուծության զարգացման հարցերը: Ստեղծվել են երկրի կլիմայական խիստ պայմաններին հարմարեցված հացահատիկային, բանջարաբոստանային և պտղատու բույսերի նոր սորտեր (Խ. Ջունդույժանցան, Մ. Ույզիա, ՄԺՀ ԳԱ թղթակից անդամ Է. Շագդար և ուրիշներ): Հրատարակվել են «Կենտրոնական Մոնղոլիայի բույսերի որոշիչ», «ՄԺՀ-ի եթերատու բույսերը», «ՄԺՀ-ի արդյունագործական կենդանիները և դրանց պահպանությունը» և այլ աշխատություններ:

ՄԺՀ ԳԱ քիմիայի ինստ-ում ուսումնասիրվել են հողում միկրոտարրերի բաշխման օրինաչափությունները, կազմվել դրանց պարունակության քարտեզները: Ծավալվել են երկրաքիմիական և կենսաքիմիական լայն ուսումնասիրություններ: Հրատարակվել է «Մոնղոլիայի պարենային բույսերի կենսաքիմիան» մենագրությունը:

ՏՓԽ-ի անդամ-երկրների մասնագետների համագործակցությամբ մոնղոլ երկրաբանները հայտնաբերել են օգտակար հանածոների բազմաթիվ հանքավայրեր: Կազմվել են ՄԺՀ երկրբ. և տեկտոնիկ քարտեզներ: Հրատարակվել են ՄԺՀ ֆիզիկական (Շ. Ցեգմիդ և ուրիշներ) և տնտ. (Բ. Գունգադաշ) աշխարհագրության վերաբերյալ աշխատություններ:

1956-ից ՄԺՀ ֆիզիկոսները մասնակցում են Միջուկային հետազոտությունների միացյալ ինստ-ի (ք. Դուբնա, ՍՍՀՄ) աշխատանքներին: 1961-ին ստեղծվել է ՄԺՀ ԳԱ ֆիզիկայի ինստ., որտեղ ուսումնասիրվում են ռադիոակտիվ նստվածքների միգրացիայի առանձնահատկությունները, կատարվում աստղագիտական հետազոտություններ: 1968-ին կազմակերպվել է մաթեմատիկայի ինստ. (ունի հաշվողական կենտրոն), որտեղ ուսումնասիրվում են տեսական և կիրառական մաթեմատիկայի հարցեր: Զգալի են մոնղոլ գիտնականների հաջողությունները բժշկության բնագավառում. մշակվել են համաճարակային հիվանդությունների դեմ պայքարի գիտական հիմունքներ, մի շարք այլ հիվանդությունների բուժման մեթոդներ: Ուսումնասիրվում են ժող. բժշկությունը և բնաշխարհի դեղաբույսերի հատկությունները:

**2. Հասարակական գիտությունները**

**Փիլիսոփայությունը**: Մոնղ. պետության կազմավորումից (1206) հետո Մոնղոլիայում տարածված շամանությանը աստիճանաբար փոխարինել է բուդդայականությունը (լամայականությունը), ներթափանցել են բուդդայական կրոնավորների տրակտատները: XVI—XVII դարերից սկսվել է մոնղ. փիլիսոփաների, տրակտատների մեկնիչների գործունեությունը: Ռոբժամբա Սոդնոմ Վանժալը հեղինակել է տրամաբանության և դիալեկտիկայի դասագիրք («Արևի շող»): Ազվան Բալդանը հնդ. փիլիսոփայությանը վերաբերող իր եռահատոր պատմության (1846) մեջ վերլուծել է Հնդկաստանի մի շարք փիլ. դպրոցներ և ուղղություններ: XVIII դ. 1-ին կեսին Չժան-չժա Խու-տուգ-տուն և ուրիշներ կազմել են փիլ. տերմինների տիբեթերեն-մոնղոլերեն բառարան («Իմաստունների բառարան»): Ժանժա Ռոլբի Դորժին գրել է հնդ. փիլիսոփայության պատմությանը վերաբերող երկհատոր աշխատություն:

Հոկտեմբերյան հեղափոխության ազդեցությամբ Մոնղոլիայում տարածվել են մարքսիզմի գաղափարները, որոնք դարձել են մոնղ. ժողովրդահեղափոխական կուսակցության (ՄԺՀԿ) գործունեության գաղափարական հիմքը: Մոնղոլ փիլիսոփաներն ու սոցիոլոգները զբաղվում են ՄԺՀ-ում սոցիալիստական շինարարության փորձի ընդհանրացմամբ: ՄԺՀ-ում փիլ. կադրեր պատրաստում է Դ. Սուխե Բատորի անվ. բարձրագույն կուսակցական դպրոցին (Ուլան Բատոր) կից մարքսիզմ-լենինիզմի և փիլիսոփայության ամբիոնը:

**Պատմագիտությունը**: Մոնղ. ֆեոդալական պատմագրության մեզ հասած առաջին հուշարձանը «Նվիրական ասք» անանուն ժամանակագրությունն է, որը գրվել է 1240-ից ոչ շուտ: XVII—XIX դարերից հայտնի են անանուն «Ոսկե կոճակ», Սագան Սեցենի «Թանկարժեք կոճակ», Ռաշիպունցուգի «Բյուրեղապակե համրիչ» ևն ստեղծագործությունները, ուր արտացոլված են XIV—XVI դդ. իրադարձությունները, ինչպես նաև լամայական կրոնավորների կենսագրություններ, տիբեթական և չինական պատմական գրականության մոնղ. թարգմանություններ: XIX դ. կեսից մոնղ. պատմագրության մեջ սաղմնավորվել է հակամանջուրական քննադատական ուղղությունը:

1921-ի ժող. հեղափոխության հաղթանակից հետո մոնղ. պատմագիտության մեջ սկսել է հիմնավորվել մարքս-լենինյան մեթոդաբանությունը: 1920—30-ական թթ. մոնղ. են թարգմանվել մարքսիզմ-լենինիզմի դասականների հիմնական աշխատությունները: Կարևոր ուշադրություն է դարձվել աղբյուրների հրապարակմանն ու հնագիտությանը: Գիտական արժեք է ներկայացնում Խ. Չոյբալսանի, Գ. Դեմիդի և Դ. Լոսոլի՝ մոնղ. ժող. հեղափոխությանը նվիրված կոլեկտիվ աշխատությունը: 1940—50-ական թթ. հրապարակվել են մի շարք մենագրություններ և կոլեկտիվ աշխատություններ, այդ թվում՝ մոնղոլ և սովետական գիտնականների համատեղ աշխատության՝ «ՄԺՀ պատմության» միհատորյակը, որը լուսաբանում է երկրի պատմությունը հին ժամանակներից մինչև XX դ. 50-ական թթ.: 1960—70-ական թթ. աճել է պատմագիտության դերը ՄԺՀ-ի աշխատավորների կոմունիստական դաստիարակության, մոնղոլ ժողովրդի պատմության օրինաչափությունները բացահայտելու և գիտականորեն ընդհանրացնելու գործում: 1960-ական թթ. վերջին ստեղծվել են «ՄԺՀ պատմություն» (1966—1970) եռահատոր աշխատությունը և «ՄԺՀԿ պատմության ուրվագծերը» (1971) ընդհանրացնող աշխատությունը: Երևան են եկել մի շարք կարևոր ուսումնասիրություններ XIX—XX դդ. սահմանագծին Մոնղոլիայի սոցիալ-տնտեսական հարաբերությունների, ժող. հեղափոխության և ՄԺՀ-ի կազմավորման (Բ. Շիրենդիբ), արաթական շարժման (Շ. Նացագդորժ),

բանվոր դասակարգի (Բ. Թուդև), ազատագրական պայքարի, Մոնղոլիայի հին պատմության և այլ հարցերի վերաբերյալ: Սովետա-մոնղոլական հնագիտական արշավախմբի (1969—71) շնորհիվ հարուստ նյութ է կուտակվել ՄԺՀ-ի տարածքում հին և նոր քարի, բրոնզի դարերի, վաղ ցեղային ու պետ. կազմավորումների ժամանակաշրջանների վերաբերյալ: Դրանց հիման վրա հրատարակվել են աշխատություններ հին թյուրքերի, շամանության մասին են: Իրականացվում է երկրի պատմության, հեղափոխության, սոցիալիզմի կառուցման և այլ հարցերի վերաբերյալ աղբյուրների և փաստաթղթերի հրատարակումը: Պատմության ուսումնասիրության հիմնական կենտրոններն են ՄԺՀ ԳԱ պատմության ինստ-ը (հիմն. 1961-ին), ՄԺՀԿ ԿԿ կից կուսակցության պատմության ինստ-ը (1955), Մոնղ. պետ. համալսարանի պատմության ամբիոնը: Հրատարակվում են պատմագիտական տարեգիրք, ամսագրեր:

**Տնտեսագիտությունը:** Ֆեոդալիզմի շրջանում Մոնղոլիայի տնտեսագիտական միտքն արտացոլվել է տարեգրություններում, օրենսդրական ակտերում և պատմատնտեսագիտական աշխատություններում, որոնցում հոչակվել է ֆեոդալների տնտ. արտոնությունների անսասանությունը, տեղեկություններ են եղել նաև մոնղոլների տնտեսության ու կենցաղի մասին: Սկսած XVIII դարից տնտեսագիտական երկերում ընդհանրացվել է անասնապահների փորձը, հանձնարարականներ են մշակվել տնտեսավարման մեթոդների վերաբերյալ: XX դ. սկզբին երկրի առաջավոր մտածողներն արդեն հանդես են եկել տնտ. հետամնացության վերացման օգտին, ապացուցել արդյունաբերության և երկրագործության զարգացման անհրաժեշտությունը:

1921-ի հակաիմպերիալիստական, հակաֆեոդալական հեղափոխությունը նշանավորեց երկրում մարքսիստական տնտեսագիտական մտքի զարգացման սկիզբը: Մինչև 1940-ական թթ. ՄԺՀ-ի տնտեսագետները հիմնականում զբաղվել են տնտ. կոնկրետ միջոցառումների, տնտ. օրենսդրության մշակմամբ, երկրի սոցիալ-տնտեսական երկարաժամկետ զարգացման պրոբլեմներով: 1950-ական թթ. կեսերից տնտեսագիտական հետազոտությունների ոլորտն ընդլայնվեց, որին նպաստեցին ՄԺՀԿ համագումարների դիրեկտիվները և Կենտկոմի պլենումների՝ տնտ. հարցերին նվիրված որոշումները: Մոնղոլ տնտեսագետների ժամանակակից ուսումնասիրությունների հիմնական ուղղություններն են երկրի տնտ. պատմությունը (Բ. Շիրենդիբ, Շ. Նացագդորժ), սոցիալիստական շինարարությունը ՄԺՀ-ում (Ն. Ժագվարալ, Ու. Կամբար, Բ. Գունգաղաշ), ժողտնտեսության ճյուղերի էկոնոմիկան (Դ. Դուգար, Դ. Ջագասբալդան, Դ. Մայդար), առևտրի զարգացման հարցերը (Պ. Լուվսանդորժ, Մ. Պելժեե), ֆինանսները (Օ. Ցենդ, Բ. Դոլգորմա):

Տնտեսագիտության հիմնական կենտրոններն են ՄԺՀ ԳԱ և Պետպլանի տնտեսագիտության ինստ-ը, ՄԺՀԿ ԿԿ-ին առընթեր բարձրագույն կուսակցական դպրոցը, Մոնղ. պետ. համալսարանը:

**3. Գիտական հիմնարկները**

1921-ին, ժող. հեղափոխությունից հետո, ստեղծվել է գիտական կոմիտե (1929-ից՝ ՄԺՀ գիտությունների կոմիտե), որի հիման վրա 1961-ին հիմնադրվել է ՄԺՀ ԳԱ (երկրում բնական և հասարակական գիտությունների հիմնական կենտրոնը): Գիտական աշխատանքներ են տարվում նաև մինիստրություններին և գերատեսչություններին ենթակա 30-ից ավելի գիտահետազոտական հիմնարկներում (անասնաբուծա-անասնաբուժական, բուսաբուծության և երկրագործության, մանկավարժության են ինստ-ներ): Երկրում գիտական աշխատանքները կոորդինացնում է (ՄԺՀ ԳԱ հետ համատեղ) գիտության և տեխնիկայի պետ. կոմիտեն:

**XII. Մամուլը, ռադիոհաղորդումները, հեռուստատեսությունը**

Հիմնական թերթերն են՝ «Ունէն» («Ճշմարտություն», 1925-ից, ՄԺՀԿ Կենտկոմի և ՄԺՀ-ի Մինիստրների խորհրդի օրգան), «Խուդոլմոր» («Աշխատանք», 1930-ից), «Զալուչուդին ունէն» («Երիտասարդական ճշմարտություն», 1924-ից), «Նովոստի Մոնգոլիի», («Новости Монголии»), 1947-ից, ռուս. և չինարեն) հանդեսները՝ «Նամին ամդրալ» («Կուսակցական կյանք», 1923-ից, ՄԺՀԿ Կենտկոմի օրգան), «Մոնղոլ ուլս» («Մոնղոլիա», 1956-ից, մոնղ., ռուս., անգլ.), «Մոնղոլին էմեգտեյչուդ» («Մոնղոլիայի կանայք», 1925-ից): 1957-ին ստեղծվել է Մոնղոլական հեռագրական գործակալությունը («ՄՈՆՑԱՄԷ»): Ռադիոհաղորդումները տրվում են 1934-ից՝ մոնղ., նաև ռուս., չին., անգլ., ֆրանս. և ղազախերեն: Հեռուստատեսությունը գործում է 1967-ից:

**XIII. Գրականությունը**

Մոնղոլների ժող. բանահյուսությունն աչքի է ընկնում ժանրերի հարստությամբ: Էպիկական գրականության մեջ հայտնի են Գեսեր խանի պատմությունը և «Ջանգար» դյուցազներգությունը: Մոնղ. առաջին գրավոր հուշարձանը՝ «Նվիրական սաբ»-ը (1240-ից ոչ շուտ), հավասարապես պատկանում է և՛ պատմական, և՛ գեղարվեստական գրականությանը: XIII—XIV դդ. գրականությունը միայն պատառիկներով ներկայացված է ավելի ուշ շրջանի՝ XVII դ. տարեգրություններում, որոնցից գեղարվեստական արժանիքներով առանձնանում են երեքը՝ անհայտ հեղինակի «Դեղին պատմությունը», Լուբսան Դանձանի «Ոսկե սաքը» և Սագան Սեցենի «Թանկարժեք կոճակը»: XIX դ. մոնղ. ինքնուրույն գրականությանը բնորոշ է ժանրերի բազմազանությունը: Այդ ժամանակ են ստեղծագործել «Կապույտ գիրք» պատմական եռերգության և «Միհարկանի տաղավարը» վեպի հեղինակ Ինժինաշը (1837—92), ժող. բանաստեղծական երգիծանքի վարպետ Խուլուչ Սանդագը (XIX դ. 1-ին կես) և ուրիշներ: Այս գրականության համար հատկանշական են հակաֆեոդալական դեմոկրատական միտումները:

Ցուանյան կայսրության (XIII դ. 70-ական թթ.—1368) ժամանակներից ընկնած ծաղկում է ապրել թարգմանական գրականությունը: Գիտական տրակտատներից բացի, լեզվաբանական, տաղաչափական, հռետորական աշխատություններ պարունակող «Գանժուր»-ի 108 հատորները և «Գանժուր»-ի մեկնություն «Դանժուր»-ի 225 հատորները թարգմանվել են հարյուրամյակների ընթացքում և տպագրվել XVIII դ.: Տարածում են գտել Հնդկաստանից եկած շատ վիպակներ ու պատմվածքներ: Բանավոր հաղորդվել են չին. զանազան վեպեր:

1921-ի ժող. հեղափոխությունից հետո զարգացել են նոր ժանրեր: Առանձնահատուկ տեղ է գրավել դրամատուրգիան: Թատրոնում է դրսևորվել ՄԺՀ-ի ժամանակակից գրականության հիմնադիրներից մեկի՝ Դ. Նացագդորժի (1906—37), գրողներ Ս. Բույաննեմեխի (1902—37), Մ. Ցադամսուրենի (1902—37), Շ. Այուշի (1904—37), Դ. Նամդագի (ծն. 1911) ձիրքը: 1920-ական թթ. երևան են եկել Ուլաան-Օտորչի (1900—34), Ց. Դամդինսուրենի (ծն. 1908) վիպակները, որոնք ՄԺՀ-ի գրականության մեջ սոցիալիստական ռեալիզմի առաջին հաջողության վկայություններն են:

1940—50-ական թթ. գրականություն մուտք գործեցին շատ բանաստեղծներ ու արձակագիրներ: Խալխինգոլի շրջանում ճապոնական զորքերի ջախջախումը (1939), Հայրենական մեծ պատերազմը (1941—45), 1945-ի աշնանը Կվանտունյան բանակի ջախջախմանը ՄԺՀ-ի մասնակցությունը պայմանավորեցին ռազմ. թեմայի հայտնվելը մոնղ. գրականության մեջ, լայն թափ ստացան մոնղոլա-սովետական բարեկամության մոտիվները (Ս. Դաշդենդև, ծն. 1912, Դ. Ցեեգմեդ, ծն. 1915, Չ. Լխամսուրեն, ծն. 1917, Դ. Տարվա, ծն. 1923): Զարգացավ ազգային դրամատուրգիան (Դ. Սենգեե, 1916—1959): 1950—60-ական թթ. գրականության նշանակալի նվաճումներից է վիպական ժանրի առաջացումն ու զարգացումը: Մոնղ. առաջին վիպագիրները դարձան Բ. Ռինչենը (ծն. 1905, «Արշալույսը տափաստանում», գիրք 1—3, 1951—55) և Չ. Լոդոյդամբան (1917—70, «Վճիտ Թամիր», գիրք 1—2, 1962—67): Հայտնի են Ժ. Պուրևի (ծն. 1921), Լ. Տուդևի (ծն. 1935), Ս. Դաշդոորովի (ծն. 1935) վեպերը: Շարունակում են զարգանալ վիպակի ու պատմվածքի ժանրերը (Բ. Բաաստ, ծն. 1921, Մ. Գաադամբա, ծն. 1924, Է. Օյուն, ծն. 1918, Ս. Ուդվալ, ծն. 1921, Դ. Մյագմար, ծն. 1933, Ս. Էրդենե, ծն. 1929): 1960—70-ական թթ. վիպակներում ու պատմվածքներում արտացոլված են կյանքի իրական պահանջներն ու բախումները, հանդես են գալիս սոցիալիզմի գաղափարներով միավորված հերոսներ: 1970-ական թթ. աննախընթաց թափ ստացավ թարգմանական գործունեությունը:

**XIV. Ճարտարապետությունը և կերպարվեստը**

ՄԺՀ-ի տարածքում հայտնաբերված հնագույն հուշարձանները (կենդանիների ժայռապատկերներ, պղնձե և բրոնզե դանակներ) բրոնզի դարի սկզբից են: Երկաթի դարի սկզբից բրոնզե իրերի և «եղջերաքարերի» (սյունաձև կամ սալաձև տապանաքարեր) վրա պատկերվել են կեն-

դանիների (այդ թվում՝ վազող եղջերուների) ոճավորված (սկյութական կենդանական ոճով) ֆիգուրներ: Նոին-Ուլիում գտնվող խուննու ցեղապետների մ. թ. ա. I դ. վերջի —մ. թ. I դ. սկզբի գերեզմանաբլուրներում պեղվել են տեղական և դրսից բերված կահ-կարասի, գործվածքներ, թաղիքե գորգեր, զարդարված ձիասարքեր: Խուննու ցեղերի բնակատեղիներն ունեցել են գրեթե քառակուսի հատակագիծ, շրջապատվել հողապատնեշով: Մոնղոլիայում թյուրքական խաքանության (VI—VIII դդ.) շրջանում ձիասարքերի, զենքերի զարդանախշերում գերակշռել է բուսական տարրը, տարածվել է հուշաքանդակը (տղամարդկանց քարե արձանիկներ տապանաքարերի մոտ, կրիանման պատվանդանով ստելլաներ): Այդ շրջանի արվեստի ստեղծագործություններին բնորոշ է ինչպես բնորդի հավաստի պատկերումը, այնպես էլ հակիրճ պայմանականությունը: Ույղուրական խաքանության (745—840) շրջանից պահպանվել են հրստակ հատակագիծ, պաշտպանական կառույցներ, տներ, տաճարներ ունեցող Օրդու-Բալըկ (հետագայում՝ Խարա-Բալգաս) մայրաքաղաքի ավերակները: Կիդանիների ժամանակ (X—XII դդ.) ծավալվել է քաղաքաշինությունը: Բարս-Խոտ I (X—XII դդ.) քաղաքի պեղումներից գտնվել են բուդդայական տաճարի և պագոդաների մնացորդներ (որոնց բնորոշ են տեղական ավանդույթների և չինական ազդեցության տարրերը), զոհասեղաններ, աստվածների և կենդանիների կավե արձանիկներ: Մոնղ. ֆեոդալական կայսրության (XII դ. վերջ —XIII դ. 1-ին կես) կազմավորման շրջանին են վերաբերում Կարակորում մայրաքաղաքում հայտնաբերված Ուգեդեյ խանի պալատի, մեհյանի մնացորդները: XVI դ.—XX դ. սկզբին մոնղ. խանություններում և իշխանություններում կացարանների հիմնական տիպը փայտե հիմնակմախքով թաղիքե յուրդն էր: XVI դ. վերջից, լամայականության տարածմանը զուգընթաց, կառուցվել են մենաստաններ և տաճարներ: Երևան են եկել փայտե (հիմքում ընկած էր յուրդի կառուցվածքը), աղյուսե (չինական տիպի) և քարե (տիբեթական տիպի) պաշտամունքային կառույցներ: Հայտնի են «խառը» տիպի Դաչխուրե և Գանդան մենաստանները (Ուլան Բատորում): Պաշտամունքային ինքնատիպ հուշակառույցներ են սուբուրգանները: XVI դ.—XX դ. սկզբի գեղանկարչությունը ներկայանում է բուդդայական հորինվածքներով և որմնանկարներով: Խիստ կանոնիկ հորինվածքը, նուրբ գծանկարը, վառ գույները նշում են Տիբեթի, Չինաստանի, Նեպալի գեղանկարչության ազդեցությունը: Տաճարային քանդակագործության մեջ հիմնականում օգտագործվել է կավը, փայտը, մամլված թղթի զանգվածը: XIX դ. վերջին տարածվել է աշխարհիկ արվեստը (դիմանկարներ, կենցաղային նկարներ, բնանկարներ, ծաղրանկարներ): Դեկորատիվ-կիրառական արվեստում իշխել է կահ-կարասու, հագուստի զարդանախշումը կենդանական, բուսական (հայտնի էր դեռևս XIII դ.) և երկրաչափական մոտիվներով: XVII դ. կեսին զարգացել է բրոնզե և արծաթե իրերի մշակումը (դրվագում, փորագրում): Տարածվել է փայտի քանդակազարդումը (կենդանիների ֆիգուրներ, զարդատուփեր), աստվածների դիմակների պատրաստումը: ՄԺՀ-ի ստեղծումով (1924) զարգացել է (ՍՍՀՄ օժանդակությամբ) քաղաքացիական և արդ. շինարարությունը, կանոնավոր հատակագծով վերակառուցվել են հին քաղաքները (Ուլան Բատոր) և կառուցվել նորերը (Դարխան, Նալայխա, Սայն Շանդ): 1920—30-ական թթ. հասարակական շենքերին հատուկ էին սովետական կոնստրուկտիվիզմի գծերը: 1940—1950-ական թթ. սկզբին հասարակական շենքերի ճակատները զարդարվել են շքամուտքերով, սյունաշարերով, ազգային զարդապատկերներով (Մոնղոլական պետ. համալսարանը, 1943—46): 1950-ական թթ. կեսերից տեղական կլիմայական պայմաններին համապատասխան կառուցվող շենքերը ձեռք են բերել պարզ ծավալատարածական հորինվածք («Շիլեն Բայշին» ցուցահանդեսային տաղավարը, 1964, Ուլան Բատոր): 1960—70-ական թթ. լայնորեն արմատավորվել են շինարարության ժամանակակից (ինդուստրիալ) մեթոդները: 1920-ական թթ. որպես ազգային գեղանկարչության բարեփոխիչ հանդես է եկել Շարավը, ավելի ուշ՝ նրա աշակերտ Մանիբադարը, որոնք ստեղծել են ժամանակակից թեմաներով աշխատանքներ՝ երբեմն օգտագործելով լուսաստվերը և գծային հեռանկարը: 1950-ական թթ. ընդլայնվել է նկարիչների (Ցաղամսուրեն, Սենգեցոխիո, Դամդինսուրեն) թեմատիկան: Ստեղծվել են առաջին յուղաներկ նկարները (Չոյդոգ, Ցեվեգժավ, Գավա, Ցուլտեմ, Ամգալան), զարգացել գրաֆիկան (Ն. Նացագդորժ, Սոսոր) և քանդակագործությունը (Չոյմբոլ, Ժամբա): ՄԺՀ դեկորատիվ-կիրառական արվեստում ավանդական ձևերի կողքին երևան են եկել նորերը՝ ճենապակի, խեցեգործություն, ոսկրի փորագրություն:



«Մարտակառք», ժայռապատկեր (մ. թ. ա. մոտ X դ., Խովդ-սոմոն, Ուվեր-Խանգայան շրջանում)



Նոին-Ուլիի գորգ (մ. թ. ա. I դ. վերջ —մ. թ. I դ. սկիզբ, Էրմիտաժ, Լենինգրադ)

**XV. Երաժշտությունը**

Մոնղ. երաժշտ. մշակույթն ունի հին ավանդույթներ: Ժող. երաժշտության հիմքը պենտատոնիկան է: Տարածված են երգերը, դյուցազներգերը և գործիքային երաժշտությունը: Ժող. երգերը միաձայն են, երկու տիպի՝ դանդաղ «ծորուն» (ուրտդուու), որն առանձնանում է մեծ ձայնածավալով, հարուստ զարդինչյուններով, և «կարճ» (բոգինո-դուու), առավել պարզ ռիթմով ու կառուցվածքով: Երգերը կատարում են ժող. նվագարանների՝ լիմբե (ֆլեյտայի տեսակ), մորինխուրա, խուչիրա (լարային աղեղնավոր), շանզի (կնտնտոցային), յոոչինա (ցիմբալի տեսակ), նվագակցությամբ: Մոնղ. առաջին հեղափոխական «Շիվե Կյախտա» («Կյախտա ամրոցի գրավումը») երգը ստեղծվել է 1921-ին, որին հաջորդել են «Կարմիր դրոշ», «Երգ ինքնաթիռի մասին», կոմպոզիտոր-երգասացներ Իշդուլամի «Լենինը մեր ուսուցիչն է», Ու. Լուվսանխուրչիի «Մարքս և Լենին», Մ. Դուգարժավի «Երգ Սուխե Բատորի մասին» ևն երգերը: ՄԺՀ տարածքում պրոֆեսիոնալ երաժշտ. արվեստը սկզբնավորվել և զարգացել է ժող. իշխանության տարիներին: 1942-ին Ուլան Բատորում բացվել է Պետ. երաժշտա-դրամատիկական թատրոն: 1945-ին ստեղծվել է առաջին սիմֆոնիկ նվագախումբը (1950-ից՝ պետ. սիմֆոնիկ նվագախումբ): 1940—50-ական թթ. մոնղոլ երիտասարդ կոմպոզիտորները, երգիչները, դիրիժորները, խմբավարները երաժշտ. կրթություն են ստացել ՍՍՀՄ-ում և սոցիալիստական այլ երկրներում: 1950-ին ստեղծվել է ՄԺՀ ժող. երգի-պարի անսամբլը, 1963-ին՝ օպերայի և բալետի պետ. թատրոնը, 1964-ին՝ ՄԺՀ կոմպոզիտորների միությունը, 1972-ին՝ պետ. ֆիլհարմոնիան: Ուլան Բատորում գործում է երաժշտապարարվեստի ուսումնարան:

**XVI. Թատրոնը**

Հնուց ի վեր Մոնղոլիայում տարածված են եղել թատերականացված տարրերով պարեր, կենցաղային ծեսեր: Ավելի ուշ այդ տարրերը մուտք են գործել միստերիական ցամ ներկայացում և աշխարհիկ պալատական թատրոն: XIX դ. 30-ական թթ. բեմադրվել է առաջին հրապարակային ներկայացումը: ՄԺՀ-ի հռչակումից (1924) հետո զարգացել է գեղարվեստական ինքնագործունեությունը, 1920-ական թթ. Ուլան Բատորում կազմակերպվել են երաժշտա-դրամատիկական խմբակներ, որոնցից ստեղծվել են պրոֆեսիոնալ թատրոններ: 1930-ին Ուլան Բատորում բացվել է թատերական ստուդիա, որի հիման վրա 1931-ին ստեղծվել է Մոնղ. պետ. կենտրոնական թատրոնը (1942-ից՝ պետ. երաժշտա-դրամատիկական թատրոն): Թատրոնի խաղացանկը կազմվել է մոնղոլ (Դ. Նացագդորժ, Մ. Ցաղամսուրեն և ուրիշներ), սովետական դրամատուրգների, ռուս և եվրոպական դասականների պիեսներից: 1963-ին պետ. երաժշտադրամատիկական թատրոնը բաժանվել է օպերայի և բալետի պետ. թատրոնի և Դ. Նացագդորժի անվ. դրամայի պետ. թատրոնի: Ուլան Բատորում գործում են

նաև Կենտրոնական մանկական (1950-ից) և Տիկնիկների (1948-ից) թատրոնները: Երաժշտա-դրամատիկական թատրոններ կան այմակային մի շարք կենտրոններում:

**XVII. Կինոն**

1935-ին Ուլան Բատորում ստեղծվել է «Մոնղոլկինո» կինոստուդիան, որը 1937-ին նկարահանել է առաջին գեղարվեստական ֆիլմը: Ազգային կինոարվեստի ձևավորման և կադրերի պատրաստման գործին նպաստել է ՄԺՀ և սովետական կինեմատոգրաֆիստների ստեղծագործական համագործակցությունը («Մոնղոլիայի զավակը», 1935, ռեժիսոր՝ Ի. Զ. Տրաուբերգ, «Նրա անունը Սուխե-Բատոր է», 1942, ռեժիսորներ՝ Ա. Գ. Զարխի և Ի. Ե. Խեյֆից են): ՄԺՀ լավագույն ֆիլմերից են «Երկու անասնապահ» (1955, ռեժիսոր՝ Ց. Զանդրա), «Սրտի կանչով» (1966, ռեժիսոր՝ Ռ. Դորժպալամ), «Ելք» (1968, ՍՍՀՄ-ի հետ, ռեժիսորներ՝ Ա. Ի. Բոբրովսկի և Ժ. Բունտար), «Ժողովրդի պատվիրակը» (1959), «Ջրհեղեղ» (1966, երկուսն էլ ռեժիսոր՝ Դ. Ժիգժիդ): Տարեկան (1973) թողարկվում են 3 գեղարվեստական և շուրջ 30 վավերագրական կարճամետրաժ ֆիլմեր: Կինոյի գործիչներից են՝ դերասաններ Գ. Գոմբոսուրենը, Լ. Լխասուրենը, Դ. Իչինխորլոն, Զ. Ցենդեխուն, ռեժիսոր-վավերագրողներ Մ. Բոլոդը, Ց. Նավանը, սցենարիստ Լ. Վանգանը, կոմպոզիտոր Դ. Լուվսանշարավը և ուրիշներ:

Պատկերազարդումը տես 704—705-րդ էջերի միջև՝ ներդիրում, աղյուսակ XVIII:

*Գրկ.* Маркс К. и Энгельс Ф., Соч., 2 изд., т. 3, с. 150—157; т. 8, с. 567—568; т. 12, с. 509, 724; т. 29, с. 154; Монгольская Народная Республика, М., 1971; Геология Монгольской Народной Республики, т. 1—2, М., 1973; Юнатов А. А., Основные черты растительного покрова Монгольской Народной Республики, М.—Л., 1950; История Монгольской Народной Республики, 2 изд., М., 1967; Рашид-ад-дин, Сборник летописей, т. 1 (кн. 1—2)—т. 3, М.—Л., 1946—1960; Бартольд В. В., Туркестан в эпоху монгольского нашествия, ч. 1—2, СПБ, 1898—1900; Майский И. М., Монголия накануне революции, 2 изд., М., 1959; Златкин И. Я., Очерки новой и новейшей истории Монголии, М., 1957; Очерки истории Монгольской народно-революционной партии, пер. с монг., М., 1971; Ширендыб Б., Народная революция в Монголии и образование Монгольской Народной Республики, 1921—1924, М., 1956; Очерки экономики Монгольской Народной Республики, М., 1969; Овдиенко И. Х., Современная Монголия, М., 1964; Рощин С. К., Сельское хозяйство МНР на социалистическом пути, М., 1971; Балдаев Р. Л., Народное образование в Монгольской Народной Республике, М., 1971; Михайлов Г. И., Литературное наследство монголов, М., 1969; Михайлов Г., Яцковская К., Монгольская литература, М., 1969; Живопись Монгольской Народной Республики. [Альбом], М., 1960; Майдар Д., Архитектура и градостроительство Монголии, М., 1972; Смирнов Б. Ф., Музыкальная культура Монголии, М., 1963; Уварова Г., Современный монгольский театр, 1921—1945, М.—Л., 1947.

**ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆ 1921**, հակաիմպերիալիստական, հակաֆեոդալական հեղափոխություն Մոնղոլիայում, որ կատարել են աշխատավոր անասնապահները (արաթները)՝ Մոնղ. ժողովրդահեղափոխական կուսակցության (ՄԺՀԿ) ղեկավարությամբ: Արաթների շարժումը սկսվել էր բարդ իրավիճակում, երբ Մոնղոլիան զավթել էին չին. ռազմամոլները և ռուս. սպիտակգվարդիական զորքերը՝ ճապոն. իմպերիալիզմի աջակցությամբ: 1921-ի մարտի 1—3-ին տեղի ունեցած ՄԺՀԿ (մինչև 1925-ը՝ Մոնղ. ժող. կուսակցություն) I հիմնադիր համագումարն ընդունեց կուսակցության ծրագիր և զինված ապստամբության կուրս վերցրեց: Փետրվարին ստեղծված պարտիզանական ջոկատները միավորվեցին Մոնղ. ժող. բանակի (ՄԺԲ) մեջ, շտաբի պետ և գլխավոր հրամանատար նշանակվեց Դ. *Սուխե Բատորը*: Մարտի 13-ին ընտրվեց Ժամանակավոր ժող. կառավարություն: Մարտի 18-ին ՄԺԲ զորամասերը չին. միլիտարիստներից ազատագրեցին Մայմաչեն (այժմ՝ Ալթան Բուլակ) քաղաքը, որից հետո պայքար ծավալվեց սպիտակգվարդիականների դեմ: Հաշվի առնելով նրանց գերակշիռ ուժերը՝ Ժամանակավոր ժող. կառավարությունը դիմեց ՌՍՖՍՀ կառավարությանը՝ սպիտակգվարդիականների դեմ համատեղ պայքարի առաջարկով: Մայիսի վերջին—հունիսի սկզբին սովետա-մոնղոլական սահմանի շրջանում կարմիր բանակի, Հեռավորարևելյան Հանրապետության ժողովրդահեղափոխական բանակի և ՄԺԲ զորամասերը ջախջախեցին սպիտակգվարդիականներին, որոնք նահանջեցին հվ.: Հունիսի 28-ին, ի պատասխան Ժամանակավոր ժող. կառավարության խնդրանքի, կարմիր բանակի զորամասերը մտան Մոնղոլիա և ՄԺԲ-ի հետ գործողություններ սկսեցին սպիտակգվարդիականների դեմ: Հուլիսի 6-ին ազատագրվեց Մոնղոլիայի մայրաքաղաք Ուրգան: Հուլիսի 10-ին կազմվեց մշտական ժող. կառավարություն: Հաշվի առնելով ժողովրդի կրոնասիրությունը՝ կուսակցության ԿԿ որոշեց ժամանակավորապես պահպանել բոգդո գեգենին՝ միապետին (սահմանափակ իրավունքներով): Մ. ժ. հ-յան (որին աջակցում էին սովետական կոմունիստները և Կոմինտերնը) հաղթանակի հետևանքով երկրում հաստատվեց ժող. իշխանություն, որը մոնղ. ժողովրդի առջև ճանապարհ բացեց դեպի ազգային և սոցիալական ազատագրում, սոցիալիզմ և կոմունիզմ՝ շրջանցելով կապիտալիզմը: 1924-ին Մոնղոլիան հռչակվեց ժող. հանրապետություն:

*Գրկ.* Чойбалсан Х., Краткий очерк истории Монгольской народной революции, пер. с монг., М., 1952.

**ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆ (ՄԺՀԿ)**: Կուսակցության հիմքերը դրվել են 1920-ի հունիսին, երբ, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ազդեցությամբ, մոնղոլական ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի վերելքի պայմաններում, երկրում գործող երկու ընդհատակյա հեղափոխական խմբերը (առաջացել էին 1919-ի կեսին, Ուրգայում, այժմ՝ Ուլան Բատոր) միավորվեցին հեղափոխական միասնական կազմակերպության՝ Մոնղոլական ժողովրդական կուսակցության (ՄԺԿ) մեջ: Այս շրջանում երկրում աշխատավոր գյուղացիության արմատական շահերի արտահայտիչներն էին մի խումբ հեղափոխականներ՝ Դ. *Սուխե Բատորի* և Խ. *Չոյբալսանի* գլխավորությամբ: ՄԺՀԿ կազմակերպորեն ձևակերպվել է կուսակցության I համագումարում (1921-ի մարտ), որտեղ ընտրվել է կուսակցության Կենտկոմ, ընդունվել քաղ. ծրագիր: Ծրագրում նշվել են գալիք հեղափոխության խնդիրները. իմպերիալիստական ճնշման վերացում, ազգային անկախության ձեռքբերում, ժող. իշխանության հաստատում, երկրի հասարակական կյանքի դեմոկրատացում, որոշվել է առավել գործունյա կապեր հաստատել Կոմինտերնի հետ: Շուտով ՄԺՀԿ ընդունվեց Կոմինտերն, իբրև համակիր կուսակցություն: ՄԺՀԿ ղեկավարությամբ երկրում հաղթանակեց հակաիմպերիալիստական, հակաֆեոդալական ժող. հեղափոխությունը (տես *Մոնղոլական ժողովրդական հեղափոխություն 1921*): 1921—24-ին, հաղթահարելով ֆեոդալների դիմադրությունը, կուսակցությունը հետևողականորեն իրականացնում էր երկրի հասարակական կյանքի հեղափոխական վերափոխման միջոցառումներ: ՄԺՀԿ II համագումարը (1923) մի շարք փոփոխություններ մտցրեց կուսակցության ծրագրի և կանոնադրության մեջ: Ձևակերպվեց այն դրույթը, որ կուսակցությունը դարձել է պետության ղեկավար և ուղղություն տվող ուժ: Ծրագրում իրենց արտացոլումը գտան դեմոկրատական ցենտրալիզմի, կուսակցության անդամության լենինյան սկզբունքները: Կուսակցության պատմության մեջ կարևոր տեղ է գրավում ՄԺՀԿ III համագումարը (1924), որը առաջ քաշեց Մոնղոլիան դեպի սոցիալիզմ տանող զարգացման ոչ կապիտալիստական ուղու մասին թեզը (նախատեսելով այն իրականացնել ՍՍՀՄ եղբայրական օգնությամբ): 1924-ի նոյեմբերին կայացած Ժողովրդական մեծ խուրալը կուսակցության ԿԿ-ի III պլենումի (1924-ի հունիս) որոշման համապատասխան Մոնղոլիան հռչակեց ժող. հանրապետություն և ընդունեց երկրի առաջին սահմանադրությունը: Կուսակցության IV համագումարում (1925) ընդունված ՄԺՀԿ երկրորդ ծրագիրը կոնկրետացրեց կուսակցության խնդիրները երկրի ոչ կապիտալիստական ուղիով զարգացումն իրականացնելու համար: Այդ ճանապարհին ՄԺՀԿ հաղթահարեց կուսակցության մեջ առաջացած «աջ» (1928) և «ձախ» (1932) թեքումները: Այդ գործում ՄԺՀԿ-ին մեծ օգնություն ցույց տվեց Կոմինտերնը:

Մոնղոլական հեղափոխության անցումը դեմոկրատական փուլից սոցիալիստականի իր արտացոլումը գտավ կուսակցության X համագումարի (1940) որոշումներում: Համագումարի ընդունած երրորդ ծրագիրը որոշեց երկրում սոցիալիզմի կառուցման հիմքերի ստեղծման գործում ՄԺՀԿ հիմնական խնդիրները: Համագումարից հետո հրավիրված VIII Ժողովրդական մեծ խուրալը (1940-ի հունիս) հաստատեց երկրի նոր սահմանադրությունը, որը օրենքի ուժով ամրապնդեց ՄԺՀԿ գլխա-

վորությամբ մոնղոլ ժողովրդի ոչ կապիտալիստական ուղիով զարգացման ընթացքում ձեռք բերած հաջողությունները: Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին (1939—45) ՄԺՀԿ հիտլերյան Գերմանիայի դեմ պայքարում սովետական ժողովրդին օգնություն ցույց տալու համաժողովրդական շարժման, ինչպես նաև ճապոնական միլիտարիզմի դեմ մոնղոլ ժողովրդի պայքարի կազմակերպիչն ու ոգեշնչողն էր: Ետպատերազմյան տարիներին ՄԺՀԿ գլխավորել է ՄԺՀ տնտեսության զարգացման պլանների իրականացումը: ՄԺՀԿ XIV համագումարը (1961) հաստատեց, որ ՄԺՀ թևակոխել է զարգացման նոր՝ սոցիալիստական հասարակարգի ստեղծման ավարտման շրջան: Կուսակցության XV համագումարը (1966) ընդունեց կուսակցության չորրորդ ծրագիրը և ժող. տնտեսության զարգացման հնգամյա (1966—70) պլանի դիրեկտիվները: Որպես կուսակցության հիմնական նպատակ, ծրագիրը նշում էր ՄԺՀ դարձնել արդյունաբերական-ագրարային երկիր: ՄԺՀԿ հետագա XVI (1971), XVII (1976) և XVIII (1981) համագումարները ընդունեցին ժող. տնտեսության զարգացման հնգամյա (1971—75, 1976—80 և 1981—85) պլանների դիրեկտիվները:

ՄԺՀԿ պատվիրակությունները մասնակցել են կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցություններին (1957, 1960, 1969, Մոսկվա) և հավանություն են տվել ընդունված փաստաթղթերին:

ՄԺՀԿ կառուցված է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքով: Կուսակցության բարձրագույն մարմինը համագումարն է: Համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում կուսակցության աշխատանքը ղեկավարում են ԿԿ ու նրա օրգանները՝ Քաղբյուրոն և քարտուղարությունը: ՄԺՀԿ առաջին քարտուղարն է Յու. *Ցեդենբալը*: Տպագիր օրգաններն են «Ունէն» թերթը և «Նամին ամդրալ» ամսագիրը:

**ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐ**, ինքնուրույն լեզվաընտանիք: Ներառնում է հս. մոնղ. սինհարմոնիկ լեզուները՝ բուն *մոնղոլերենը*, բուրյաթերենը, կալմիկերենը, օյրաթերենը, հվ-արլ. ոչ սինհարմոնիկ լեզուները՝ դագուրերենը (Հյուսիս-Արևելյան Չինաստանում), դունսյաներենը, մոնգորերենը, բաոաներենը (բոլորն էլ անգիր), միջակա լեզուները՝ գրավոր հին մոնղոլերենը, մոգոլերենը (Աֆղանստանում): Մինչև միասնական ազգային պետության կազմավորումը մոնղոլները զարգացած գրական լեզու և գիր չեն ունեցել: Պետականության քայքայումը (XVI—XVII դդ.) ըստ էության չհանգեցրեց բուն մոնղոլերենի մահացման, քանի որ այդ ժամանակ արդեն կազմավորվել էր նրա գրական տարբերակը, որը մշակութային ու լեզվական կապերի միջոց էր հս. և հվ. կամ արտաքին ու ներքին մոնղոլների համար:

*Գրկ.* Санжеев Г. Д., Сравнительная грамматика монгольских языков, т. 1—2, М., 1953—64.

**ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ՁԻ**, տեղական, տափաստանային հնագույն ծագման ձի: Բուծվում է ՄԺՀ-ում: Մնդավի բարձրությունը մոտ 130 *սմ* է: Ունի զարգացած մկանունք, ամուր ոտքեր և խիտ մազածածկ: Դիմացկուն է. հեշտությամբ քայլում է չոր տափաստանի և կիսաանապատի ավազներով, ցրտադիմացկուն է: Հարմարված է շուրջտարյա երամակային պահվածքի պայմաններին: Տարածված թույրերն են մոխրագույնը և աշխետը: Օգտագործվում է որպես հեծկան, լծկան, բեռնակիր, ինչպես նաև մսատու և կաթնատու կենդանի: Երկարակյաց է. աշխատունակությունը պահպանում է մինչև 18 և ավելի տարի:

**ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐ**, մոնղոլական ֆեոդալների արշավանքներն ու պատերազմները XIII դարում՝ նոր հողեր ձեռք բերելու, ավարառության և այլ ժողովուրդներին ստրկացնելու նպատակով: Մ. ն. սկզբնավորել է *Չինգիզ խանը* (1206—27), որը միավորել էր միմյանց դեմ կռվող մոնղ. ցեղերին, ստեղծել բազմաքանակ, կարգապահ բանակ: Չինգիզ խանի օրոք մոնղոլները նվաճեցին Սիբիրի և Միջին Ասիայի արլ. ժողովուրդներին՝ բուրյաթներին, յակուտներին, օյրաթներին, կիրգիզներին, ույղուրներին (1207—1211), Չինաստանում՝ Հուանհե գետից հս. գտնվող բոլոր հողերը (1211—17) և Միջին Ասիան (1219—21): 30 հզ-անոց մի բանակ 1220-ի աշնանը Ջեբե և Սուբեդեյ զորավարների գլխավորությամբ հետախուզության նպատակով Իրանի վրայով մտավ Անդրկովկաս, Կասպից ծովի արմ. ափով ներխուժեց ալանների երկիրը, ջախջախեց նրանց (1222), 1223-ի մայիսին Կալկա գետի մոտ ջախջախեց ռուս-ղփչաղական միացյալ զորքը, ապա պարտվելով Կամա-Վոլգյան Բուլղարիայում, վերադարձավ Մոնղոլիա (1224): Մեծ խան Հոքաթայի (Ուգեդեյ) օրոք (1229—41) մոնղոլներն արլ-ում ավարտեցին Հյուսիսային Չինաստանի նվաճումը (1231—34), պատերազմ սկսեցին Կորեայի դեմ: 1236-ին մոնղ. 150 հզ-անոց զորքը *Բաթու խանի* գլխավորությամբ ներխուժեց Կամա-Վոլգյան Բուլղարիա, նվաճեց այն, 1237-ին կռվեց ալանների, ղփչաղների և միջին Վոլգայի ժողովուրդների դեմ, 1237—40-ի ընթացքում նվաճեց Ռուսիայի իշխանությունները (Ռյազանի, Վլադիմիրի, Տվերի, Կիևի ևն) և քաղաքները (Կոլոմնան, Մոսկվան, Ցարոսլավլը, Կիևը ևն): 1241-ի գարնանը Բաթու խանի հիմնական ուժերը ներխուժեցին Հունգարիա, պարտության մատնեցին հունգ. 60 հզ. զորքը: Մոնղ. մի այլ ջոկատ ներխուժեց Լեհաստան, պարտության մատնեց լեհ-գերմանական ֆեոդալական աշխարհազորը: Արևելյան Չեխիա ներխուժած մոնղ. առանձին ջոկատներ ետ շպրտվեցին, 1241-ի վերջին մոնղ. ամբողջ զորքը Հունգարիայից ժամանակակից Ավստրիայի և Հորվաթիայի տարածքով շարժվեց դեպի Ադրիատիկ ծով: 1242-ին, ծովափնյա ամրոցների անհաջող պաշարումից հետո, Բաթու խանը Բոսնիայի, Սերբիայի և Բուլղարիայի վրայով նահանջեց Կենտրոնական Եվրոպայից:

1236—45-ին մոնղ. զորքերը գրավեցին Անդրկովկասը, Հայաստանը, Փոքր Ասիան՝ բացի Կիլիկիայի հայկական պետության և Նիկիայի կայսրության տարածքներից: Մեծ խան Մանգուի (Մունքե) օրոք (1251—59) *Հուլավուն* նվաճեց Իրանը, Միջագետքը (1256), 1258-ին՝ Արաբ. խալիֆայության մայրաքաղաք Բաղդադը, ներխուժեց Ասորիք: Մեծ խան *Խուբիլայի* օրոք (1260—94) մոնղ. արշավանքներն ուղղված էին Ասիայի արլ. և հվ-արլ. երկրների դեմ: Դեռևս 1253-ին մոնղոլները գրավել էին Տիբեթը: 1267—79-ին նրանք նվաճեցին Հարավային Չինաստանը, մինչև 1273-ը ավարտվեց Կորեայի տարածքի մեծ մասի նվաճումը: 1274-ին և 1281-ին երկու անհաջող արշավանք ձեռնարկվեց Ճապոնիա: 1277, 1282, 1287-ի արշավանքներից հետո մոնղ. և չինական զորքերը գրավեցին Բիրման, սակայն 1291-ին վտարվեցին այնտեղից: Մոնղոլաչինական զորքի և նավատորմի բազմաթիվ հարձակումները Վիետնամի վրա (1257—1258, 1284—85, 1287—88) անհաջողության մատնվեցին: 1300-ին Բիրմա կատարած արշավանքով ավարտվեցին մոնղ. նվաճումները: Մոնղ. արշավանքներն ուղեկցվում էին բնակչության զանգվածային կոտորածներով, ավարառությամբ, քաղաքների ու գյուղերի ամայացմամբ, մշակութային արժեքների ոչնչացմամբ:

Մոնղ. արշավանքների հետևանքով ստեղծվեց մի հսկայածավալ պետություն, որն իր մեջ ընդգրկում էր հասարակական-տնտեսական և մշակութային զարգացման տարբեր աստիճանի վրա գտնվող բազմաթիվ ժողովուրդներ, նրանցից շատերը կանգնած էին զարգացման առավել բարձր աստիճանի վրա, քան նվաճողները: Մոնղ. տիրապետությունը երկար ժամանակ կասեցրեց նվաճված ժողովուրդների հասարակական-տնտեսական և մշակութային զարգացումը: Մոնղոլների ստեղծած կայսրության ներսում քաղ. և տնտ. կապերի թուլությունը հանգեցրեց նրա տրոհմանը: Մանգու խանի օրոք առանձին պետություններ ստեղծեցին Բաթու խանը (տես *Ոսկե հորդա*) և Հուլավուն (տես *Իլխանություն*): Խուբիլայի և նրա հաջորդների կայսրությունը կոչվեց Յուան:

1368-ին մոնղոլները վտարվեցին Չինաստանից: XIV դ. 2-րդ կեսին վերացվեց մոնղ. տիրապետությունը Իրանում, Անդրկովկասում, Հայաստանում, Միջին Ասիայում: XIV դ. վերջին քառորդին մոնղ. կայսրությունը դադարեց գոյություն ունենալուց: Մոնղոլների հետագա պատմությունը տես *Մոնղոլական Ժողովրդական Հանրապետություն* հոդվածի պատմական ակնարկում:

Մոնղ. մեծ խաները՝

Չինգիզ խան (1206—27), Հոքաթա (Ուգեդեյ, 1229—41), Գույուք (1246—48), Մանգու (Մունքե, 1251—59), Խուբիլայ (1260—97):

Մոնղոլներից նվաճված Ռուսիան սկզբնապես գտնվում էր մոնղ. մեծ խանի, ապա՝ Ոսկե հորդայի խանի իշխանության տակ: Ռուս. իշխանությունները պահպանեցին տեղական վարչական կառավարումը, նրանց գործունեությունը հսկում էին բասքակները: Ռուս. իշխանները մոնղ. խաների հարկատուներն էին և նրանցից *յառլիկ* էին ստանում իրենց հողերին տիրելու վերաբերյալ: XIV դ. 20-ական թթ. ռուս. ժող. ապստամբությունների հետևանքով հարկահավաքման իրավունքը

բաղադրիչներից անցավ տեղական իշխաններին. դա նպաստեց ռուս իշխանների քաղ. և ռազմ. հզորացմանը: XIV դ. կեսից *Մոսկվայի Մեծ իշխանության* ուժեղացումով մոնղ. լուծը սկսեց աստիճանաբար թուլանալ: 1380-ին Մոսկվայի իշխան *Դմիտրի Իվանովիչ Դոնսկոյը* հաղթեց մոնղ. խան Մամային (տես *Կուլիկովյան ճակատամարտ 1380*) և սկզբնավորեց մոնղ. լուծը թոթափելու ընթացքը: XV դ. 2-րդ կեսին ռուս. կենտրոնացված պետության ստեղծումով հնարավոր դարձավ լրիվ ազատագրումը մոնղ. լծից: 1476-ին Մեծ իշխան Իվան III հրաժարվեց Ոսկե հորդային հարկ վճարելուց: 1480-ին խան Ահմադը արշավեց Մոսկվա, սակայն չհամարձակվեց ճակատամարտել: Դրանից հետո մոնղոլ-թաթարները վերջնականապես հեռացան ռուս. երկրից:

***Մոնղոլական տիրապետությունը Հայաստանում***:

Մոնղոլներն առաջին անգամ Հայաստան և Անդրկովկաս ներխուժեցին 1220-ին՝ Ջեբեի և Սուբեդեյի (Սուբաադայ) գլխավորությամբ: Աղստևի (1220), Կոտմանի (1221), Խունանի (1222) ճակատամարտերում պարտության մատնեցին հայ-վրացական զորքերին, ավերեցին Հայաստանի հս., Վրաստանի հվ-արլ. շրջանները և հեռացան հս.: 1236-ին մոնղոլները Հայաստան և Անդրկովկաս ներխուժեցին Չարմաղանի գլխավորությամբ, նվաճեցին Հայաստանի հս-արլ. շրջանները և Արևելյան Վրաստանը: 1242—45-ին մոնղոլները Բաչուի գլխավորությամբ նվաճեցին Հայաստանի հվ-արմ. նահանգները: Հայ ֆեոդալական վերնախավը թեև սկզբնապես որոշ դիմադրություն ցույց տվեց զավթիչներին, սակայն հպատակություն հայտնեց և դարձավ նվաճողների վասալը: Իսկ Անիում, Արցախում, Կարինում, Երզնկայում, Կեսարիայում հայերը հերոսական դիմադրություն ցույց տվեցին նվաճողներին: Հայաստանի տարածքը սկզբնապես մտցվեց Ատրպատականի կուսակալության մեջ, որը բաժանված էր վարչատնտեսական հինգ միավորի՝ վիլայեթների. 1. Արևելյան Վրաստանի թագավորությունը, Զաքարյանների ֆեոդալական իշխանությունը (Այրարատ, Սյունիք, Գուգարք) անվանվում էր *Գյուրջիստանի վիլայեթ*, 2. Հայաստանի հվ-արմ. նահանգները՝ «Մեծ Հայք» վիլայեթ, 3. Շիրվան, 4. Առան և Մուղան, 5. Ատրպատական: Վիլայեթները կազմված էին ռազմավարչական առավել փոքր միավորներից՝ *թումաններից*: Հայաստանի հս-արլ. շրջանները կազմում էին Գյուրջիստանի վիլայեթի ութ թումանից երեքը, ուր կառավարում էին Զաքարյան տոհմի իշխանները, որոնք դիտվել են որպես մոնղոլների պետության ավատառուներ և վարչական ապարատի պաշտոնյաներ: «Մեծ Հայքի» վիլայեթի արոտավայրերով հարուստ նահանգները դարձել էին մոնղոլների ամառանոցների ու ձմեռանոցների վայրեր և որպես բաժնեկալվածք տրվել մոնղոլ ավագանուն: Մյուս նահանգների հողային տարածությունների մի մասը պետականացվել էր, մի մասն էլ տրվել խանական տան անդամներին՝ իբրև «*ինջու*»-ական, հետագայում նաև «*իքտա*»-ական տիրույթներ: Նախալեռնային և լեռնային նահանգները, որտեղ քուրդ և սելջուկ իշխանները հպատակություն էին հայտնել մոնղոլներին, թողնվել էին նրանց տնօրինության տակ: «Մեծ Հայքի» վիլայեթի մեջ մտնող հայկական նախկին ֆեոդալական իշխանություններից բեկորներ էին պահպանվել Տավրոսի լեռնաշղթայի առանձին հատվածներում՝ Սասունում, Մոկքում, Ռշտունիքում (Արծրունիներ և Մամիկոնյաններ), որոնց իշխանները, ճանաչելով մոնղոլների գերիշխանությունը, պահպանել էին իրենց ինքնուրույնությունը: 1256-ին Հայաստանը մտավ Հուլավուի հիմնած *իլխանության* կազմի մեջ: Մոնղոլները տեղական իշխողների կողքին նշանակում էին մոնղոլ գործակալներ, որոնք հիմնականում օժտված էին զինվորական իշխանությամբ: Նվաճված երկրները տնտեսապես նվաճելու և տեղական խոշոր ֆեոդալների տնտ. հզորությունը թուլացնելու նպատակով մոնղոլները 1252—59-ին մոնղ. կայսրությունում անցկացրին *աշխարհագիր*՝ մարդկանց, անշարժ և շարժական ունեցվածքի, անասունների հաշվառում: Հայաստանում այն անցկացվել է 1254-ին: Աշխարհագիրը կործանարար հետևանքներ է ունեցել նվաճված ժողովուրդների համար: Մինչև Ղազան խանի (1259—1304) բարեփոխումները բացակայել է միասնական հարկադրման չափը, որը կամայականությունների և չարաշահումների հնարավորություններ է՛ ստեղծել: Հայկական ֆեոդալական իշխանությունների՝ Զաքարյանների, Վաչուտյանների, Խաղբակյան-Պռոշյանների, Օրբելյանների, Արծրունիների, Հասան-Ջալալյանների և մյուսների դերը XIV դ. սկզբից քաղ. և տնտ. կյանքում զգալիորեն թուլացել է: Հայ իշխանական տները սկսել են քայքայվել՝ իրենց տեղը աստիճանաբար զիջելով վաչկատուն ազնվականությանը: Մոնղոլների կիրառած հարկային ծանր քաղաքականությունը, ազգային ճնշումը առավել վատթարացրին բնակչության լայն զանգվածների վիճակը՝ մասնավորապես քաղաքային ստորին խավերի և գյուղացիության, որոնք ենթարկվում էին կրկնակի շահագործման: Ստեղծված իրավիճակից փրկվելու համար հազարավոր հայեր տարագրվում էին հայրենիքից: Հայաստանի երբեմնի բարգավաճ քաղաքները՝ Անին, Կարսը, Դվինը ևն, XIII դ. 1-ին կեսին վերածվել էին գյուղերի, քայքայվել էր քաղաքային կյանքը, արհեստագործությունը:

Հայ և վրաց ֆեոդալները երկու անգամ ապստամբեցին մոնղ. լուծը թոթափելու համար (1249, 1259—61), սակայն պարտվեցին: Մոնղոլները դաժան հաշվեհարդար տեսան ապստամբների և նրանց ղեկավարների՝ հայ իշխաններ Զաքարիա Զաքարյանի, Հասան Ջալալի, վրաց Գոնդա թագուհու և ուրիշների հետ:

XIII դ. 90-ական թթ. իլխանությունն ապրում էր քաղ. և տնտ. ճգնաժամ, իսկ XIV դ. 40-ական թթ. այն վերացավ: Մոնղոլական քոչվորական ֆեոդալական տնտեսաձևի տիրապետությունը Հայաստանում կասեցրել է նրա հասարակականտնտեսական և մշակութային զարգացումը:

Մոնղոլների և Կիլիկիայի հայկ. պետության հարաբերությունների մասին տես *Կիլիկյան Հայաստան* և *Հայ-մոնղոլական դաշինք 1254* հոդվածներում:

*Գրկ.* Բաբայան Լ., Հայաստանի սոցիալ-տնտեսական և քաղաքական պատմությունը XIII—XIV դարերում, Ե., 1964: Հայ ժողովրդի պատմություն, հ. 3, Ե., 1976: Греков Б. Д., Якубовский А. Ю., Золотая Орда и ее падение, М.—Л., 1950; Бартольд В. В., Туркестан в эпоху монгольского нашествия, Соч., т. 1, М., 1963; Татаро-монголы в Азии и Европе. Сб. ст., М., 1970.

*Լ. Բաբայան, Վ. Խաչատրյան*

**ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ՕՊԵՐԱՑԻԱ 1921**, սովետական և մոնղոլական զորքերի մարտական գործողությունները գնդ. Ռ. Ֆ. Ունգերն ֆոն Շտերնբերգի սպիտակգվարդիական հրոսակախմբերի դեմ: Մ. օ. բաժանվում է երկու շրջանի՝ պաշտպանողական (մայիս—հունիս) և հարձակողական (հունիս—օգոստոս): 1921-ի մայիսին Մոնղոլիայի տարածքում Ունգերնի հրամանատարությամբ գործող սպիտակկազակական և մոնղ. ֆեոդալների ջոկատները (շուրջ 10550 թուր, 200 սվին, 37 գնդացիր ևն) հարձակվեցին սովետական սահմանապահ զորքերի վրա մի շարք տեղամասերում: Սպիտակգվարդիականների հիմնական ուժերը հարձակվեցին Սելենգա գետի երկու ափերով Տրոիցկոսավսկի և Կյախտայի վրա: 5-րդ կարմիր բանակի (հրամ. Մ. Մատիյասևիչ) 35-րդ դիվիզիայի զորամասերի և Հեռավորարևելյան Հանրապետության ժողովրդահեղափոխական բանակի ու մոնղ. ժող. հեղափոխական բանակի զորքերի (տես *Մոնղոլական ժողովրդական հեղափոխություն 1921*) համատեղ գործողություններով թշնամին ետ շպրտվեց (հեռացավ Մոնղոլիայի խորքը): Հունիսի կեսին Մոնղոլիայի ժամանակավոր ժող. կառավարության խնդրանքով սովետական հրամանատարությունը սկսեց նախապատրաստել սպիտակ հրոսակախմբերի վերացման և Մոնղոլիայի ազատագրման համար հարձակումը: Ձևավորվեց 5-րդ բանակի էքսպեդիցիոն կորպուսը (շուրջ 7600 սվին, 2500 թուր, 20 թնդանոթ, 4 ինքնաթիռ ևն)՝ Կ. Ա. Նեյմանի հրամանատարությամբ: Հունիսի 27-ին էքսպեդիցիոն կորպուսի զորամասերը Հեռավորարևելյան Հանրապետության ժող. հեղափոխական բանակի և մոնղ. ժողովրդական հեղափոխական բանակի (Սուխե Բատորի հրամանատարությամբ) հետ համատեղ սկսեցին հարձակումը Մոնղոլիայում: Հիմնական ուժերը (5-րդ հեծյալ դիվիզիան, 103-րդ հրաձգային բրիգադը և մոնղ. գնդերը) հարձակվեցին Ուրգայի վրա. նրանց գործողությունները ապահովվում էին արմ-ից՝ 105-րդ հրաձգային բրիգադը 35-րդ հեծյալ գնդի հետ և մոնղ. հեծյալ ջոկատը (Չոյբալսանի գլխավորությամբ), ու արլ-ից՝ Հեռավորարևելյան Հանրապետության ժող. հեղափոխական բանակի 2-րդ հեծյալ բրիգադը: 10 օրվա ընթացքում զորքերը մարտերով անցան մոտ 350 *կմ* և հուլիսի 6-ին ազատագրեցին Ուրգան: Ունգերնի զորքի մնացորդները (շուրջ 4000 թուր, 6—8 թնդանոթ, 18—20 գնդացիր) ետ քաշվեցին Վան-Կուրե-

նի շրջանը (սովետական սահմանից 75 *կմ* վրա): Հուլիսի 18—21-ին սովետա-մոնղոլական զորքերը համառ մարտեր մղեցին թշնամու դեմ: Բայց շնորհիվ իր հեծելազորի շարժունակության թշնամուն հաջողվեց հեռանալ սովետա-մոնղոլական զորքերից: Հուլիսի 24-ից օգոստ. 3-ը Ունգերնի ջոկատները նորից ներխուժեցին սովետական տարածք, Գուսինոյե լճից հս. ընկած շրջանում, բայց մեծ կորուստներ կրելով, օգոստ. 3-ին սկսեցին նահանջել: Սպիտակգվարդիական զորքերի մեջ սկսվեց կազմալուծումը. Ունգերնը ոչ մեծ ջոկատով գերի ընկավ: Թշնամու զորքերի մնացորդները ոչնչացվեցին Ուրգայից արլ. և հվ-արլ. ընկած շրջանում: Կարմիր բանակի օգնության շնորհիվ մոնղոլ ժողովուրդը հնարավորություն ստացավ հաստատելու և ամրապնդելու իր ազգային ժող. իշխանությունը:

Գրկ. Кисилев А. Н., Разгром Унгерна, М., 1964.

**ՄՈՆՂՈԼԱ-ՕԽՈՏՍԿԱՆ ԳԵՈՍԻՆԿԼԻՆԱԼԱՅԻՆ ՀԱՄԱԿԱՐԳ**, Ուրալա-Մոնղոլական ծալքավոր գեոսինկլինալային գոտու ծալքավոր համակարգերից. ձգվում է ավելի քան 2000 *կմ* հս-արլ. Մոնղոլիայից մինչև Օխոտի ծովի արմ. ափերը: Այդ տերիտորիան առաջին անգամ առանձնացրել է Ա. Ե. Ֆերսմանը, 1926-ին, որպես երկրաքիմիական զոնա և կոչել Մոնղոլա-Օխոտական զոտի: Հս-ում Մ-Օ. գ. հ. սահմանափակված է Մոնղոլա-Օխոտական խորքային խզվածքներով, իսկ հվ-ում՝ Բուրեյական զանգվածով և Հարավ-Գոբիական խզվածքների համակարգով: Մ. Օ. գ. հ-ի կազմության մեջ առանձնացվում են գեոսինկլինալային զարգացման ռիֆեյի, ստորին և միջին պալեոզոյան փուլերը: Վերին պալեոզոյում և ստորին տրիասում համարյա ամբողջ տերիտորիան գտնվել է լեռնակազմական փուլում, որն ուղեկցվել է գրանիտոիդային հսկայական զանգվածների ներդրումով, էվգեոսինկլինալային ճկվածքները պերմում պահպանվել են միայն արլ-ում, Մ-Օ. գ. հ-ի և ավելի երիտասարդ Սիխոտե—Ալինի գեոսինկլինալային համակարգի միակցման զոնայում:

Մ-Օ. գ. հ. մեզոզոյան կառուցվածքները հետազոտողների մի մասը վերագրում է գեոսինկլինալների կարգին, մյուսները՝ գրանիտոիդային ակտիվացման կառուցվածքներին: Նրանց համար բնորոշ են ծովային և ցամաքային մոլասանման և ածխաբեր նստվածքները, որոնք զուգակցվում են վերերկրյա հրաբխայնության (անդեզիտային ֆորմացիա) լայն զարգացման և հրաբխա-պլուտոնիկ ֆորմացիայի կոմագմատիկ գրանիտոիդների ներդրման հետ: Մեզոզոյի մագմատիզմի հետ կապված են կապար-ցինկային հանքանյութերի, ոսկու, անագի, վոլֆրամի, ֆլյուորիտի և այլ հանքավայրեր:

**ՄՈՆՂՈԼԵՐԵՆ**, պատկանում է մոնղոլական լեզվաընտանիքին: ՄԺՀ, ինչպես նաև Ներքին Մոնղոլիայի հիմնական բնակչության և ՉԺՀ այլևայլ շրջաններում ապրող առանձին խմբերի լեզուն: Խոսողների թիվը՝ 3 մլն (1970): Ձևավորվել է մոտ XIV—XVI դդ.: Տրոհված է մի շարք բարբառների (խալխայական, չախարական, տումեթական, օրդոսական ևն): Մ-ին հատուկ է կցականությունը, բացակայում է քերականական սեռը, որոշչի և որոշյալի, ինչպես նաև ենթակայի ու ստորոգյալի համաձայնությունը թվով ու հոլովով: Առկա է 7 հոլով, բայական 5 սեռ, խոնարհման 21 ձև: Վերջնահանգ ձայնեղները խլանում են, շատ բաղաձայններ ունեն քմային տարբերակներ: Գործում է ձայնավորների ներդաշնակության օրենքը: Ազգային գրական Մ. 1921-ի Մոնղ. ժող. հեղափոխությունից հետո զարգացել է խալխայական բարբառի հիման վրա:

Այբուբենը XIII դարից ույղուրագիր՝ վերից վար, աջից ձախ, 1945-ից՝ սլավոնագիր:

Գրկ. Санжеев Г. Д., Современный монгольский язык, 2 изд., М., 1960.

**ՄՈՆՂՈԼԻԱ**, պատմական մարզ Ասիայի կենտրոնական մասում: Կազմված է Արտաքին և Ներքին Մոնղոլիաներից: Արտաքին Մոնղոլիայում 1921-ին ստեղծվել է անկախ մոնղոլական պետություն (1924-ից՝ *Մոնղոլական Ժողովրդական Հանրապետություն*): Ներքին Մոնղոլիան կազմում է ՉԺՀ-ի *Մոնղոլիա Ներքին* ինքնավար շրջանը:

**ՄՈՆՂՈԼԻԱ ՆԵՐՔԻՆ**, Ներքին Մոնղոլիայի ինքնավար շրջան, Հյուսիսային Չինաստանում: Տարածությունը 1,1775 մլն *կմ²* է, բն.՝ 9,2 մլն (1978), վարչական կենտրոնը՝ Հուրհոտ: Տնտեսության հիմքը գյուղատնտեսությունն է, հատկապես՝ հողագործությունը: Մշակում են հացահատիկի երաշտադիմացկուն սորտեր (գարնանացան ցորեն, չինակորեկ, կորեկ, հնդկացորեն, վարսակ, եգիպտացորեն), տեխ. կուլտուրաներից՝ սոյա, արևածաղիկ, կանեփ, քնջութ, երկարաթել վուշ, բամբակենի, շաքարի ճակնդեղ: Տարածքի մոտ 2/3-ը գրավում են անասնապահական շրջանները: Մ. Ն. Չինաստանի բրդի, մսի և կաշվի հումքի հիմնական մատակարարողներից է: Արդյունաբերությունն սկսել է զարգանալ ժող. հեղափոխության հաղթանակից (1949) հետո: Համաչինական նշանակություն ունեն շաքարի, կաշվի, տեքստիլ, քիմ., լեռնահանքային, փայտամշակման, ցեմենտի և մետալուրգիական արդյունաբերության ճյուղերը: Մ. Ն-ի տարածքով է անցնում Մոսկվա—Ուլան Բատոր—Պեկին երկաթուղին: Մ. Ն-ի տարածքում միջնադարում եղել են մոնղ. իշխանություններ, որոնք 1636-ին ընկել են Չինաստանը նվաճած մանջուրների իշխանության տակ: Չինաստանի կազմում տարածքն ստացել է Մ. Ն. անունը: XIX դ. 2-րդ կեսին Մ. Ն-ում սկզբնավորվել է դեմոկրատական ազատագրական շարժում մանջուրական իշխանությունների դեմ: 1925-ի ապրիլին հիմնվել է Մ. Ն-ի ժողովրդահեղափոխական կուսակցությունը, որը Չինաստանի կոմկուսի ղեկավարությամբ գլխավորել է Մ. Ն-ի ժողովրդի հեղափոխական պայքարը: 1931—45-ին Մ. Ն-ի զգալի մասը զավթել էր Ճապոնիան: 1945-ի օգոստոսին սովետական բանակը ՄԺՀ-ի զորքերի և տեղական պարտիզանների հետ ազատագրեց Մ. Ն.: 1947-ի մայիսին ստեղծվեց Մ. Ն-ի ինքնավար շրջան, որի մեջ մտցվեցին նախկին Սույյուան նահանգի տարածքը (1954) և Գանսու նահանգի մոտ. շրջանները (1956):

**ՄՈՆՂՈԼԻԱՅԻ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ**, ՄԺՀ գիտությունների ակադեմիա, ՄԺՀ առաջատար գիտական հիմնարկությունը: Հիմնադրվել է 1961-ին: Բաղկացած է 3 բաժանմունքից՝ հասարակական գիտությունների (պատմության, գրականության և լեզվի, փիլիսոփայության, սոցիոլոգիայի և իրավունքի, տնտեսագիտության ինստ-ներ, արևելագիտության բաժին), կենսաբանության և Երկրի մասին գիտությունների (ընդհանուր և փորձարարական կենսաբանության, կենսաբանական ակտիվ նյութերի, բուսաբանության, աշխարհագրության և սառցույթագիտության, երկրաբանության ինստ-ներ), ֆիզիկամաթեմատիկական և քիմիական գիտությունների (ֆիզիկայի, քիմիայի, մաթեմատիկայի ինստ-ներ, հաշվողական կենտրոն): Ունի գիտական հիմնակազմ գրադարան, աստղադիտարան, հրատարակչություն, հրատարակում է «ԲՆՄԱՌԻ-ին Շինժլէխ ուխաանի ակադեմիյն մէդէէ» («ՄԺՀ ԳԱ-ի տեղեկագիր», 1961): ՄԺՀ ԳԱ իրականացնում է մինիստրությունների և գերատեսչությունների ճյուղային գիտահետազոտական հիմնարկների ղեկավարությունը: Կապեր է պահպանում շատ արտասահմանյան երկրների և ՍՍՀՄ ԳԱ-ների ու գիտական կազմակերպությունների հետ: ՄԺՀ ԳԱ պրեզիդենտն է ակադեմիկոս Բ. Շիրենդիբը (ՍՍՀՄ, ՀԺՀ, ՉՍՍՀ ԳԱ-ների արտասահմանյան անդամ):

**ՄՈՆՂՈԼՆԵՐ**, լայն առումով՝ *մոնղոլական լեզուներով* խոսող բոլոր ժողովուրդների (ՄԺՀ-ի և ՉԺՀ-ի Մ., բառան, դունսյան, տու, դաուրներ, Աֆղանստանի Մ., բուրյաթներ, կալմիկներ) պատմական անվանումը, նեղ իմաստով՝ ՄԺՀ-ում և ՉԺՀ-ում բնակվող Մ.: Մարդաբանական առումով Մ. գլխավորապես *մոնղոլոիդ ռասայի* կենտրոնական-ասիական տիպի ներկայացուցիչներն են:

Մոնղոլական էթնիկական ընդհանրությունը ձևավորվել է Մոնղոլիայի և Հյուսիս-Արևելյան Չինաստանի տարածքում՝ հնագույն տեղաբնիկների հիման վրա: XIII դ. մի շարք ցեղեր և խանություններ միավորվեցին *Չինգիզ խանի* գերիշխանության տակ, և ստեղծվեց միասնական մոնղոլական պետությունը: XV դ. Մ. բաժանվեցին արմ. և արլ. խմբերի, իսկ XVI դ. արլ-ը բաժանվեց հս-ի և հվ-ի: Արմ. Մ., որ հայտնի էին օյրաթներ անվանմամբ, XVII դ. 30-ական թթ. ստեղծեցին Օյրաթական խանությունը: Նրանց հետնորդները մասամբ մտան ՄԺՀ Մ-ի, Չինաստանի Մ-ի և կալմիկների կազմում: Արլ. խմբի հս. մասը XV դ. ընդունեց «խալխա» անվանումը: Վերջինիս հետնորդների մի մասը ՄԺՀ-ի, իսկ մյուս մասը Չինաստանի այժմյան Մ. են: Հվ. Մ. մեծամասնությամբ մտան Չինաստանի Մ-ի կազմում՝ 1636-ին ընդունելով մանջուրական դինաստիայի գերիշխանությունը: Հետագայում Չինաստանի կազմում եղած մոնղ. հողերը կոչվեցին Ներքին Մոնղոլիա: Օյրաթները Չինաստանի տարածքում հայտնվեցին XVIII դ. 2-րդ կեսին: XVI դ. վերջին—XVII դ. սկզբին Մ.

ընդունեցին լամայականություն: Մ-ի բոլոր խմբերի հիմնական զբաղմունքը անասնապահությունն է, հնում՝ վաչկատուն, այժմ՝ կիսանստակյաց: Օժանդակ դեր էին կատարում հողագործությունն ու անասնապահությունը:

ՄԺՀ Մ. սոցիալիստական ազգ են, որի միջուկը եղել են խալխաները: Թիվը՝ 901,2 հզ. (1969): Խալխաներին ձուլվել են նաև մի շարք էթնիկական խմբեր: Խալխաների շուրջն են համախմբվում նաև արմ. Մ., որոնք պահպանել են լեզվի և մշակույթի առանձնահատկությունները: Խալխաների լեզուն մտնում է մոնղոլական լեզուների արլ. խմբի մեջ և ընկած է Մ-ների ժամանակակից լեզվի հիմքում: (Մ-ի պատմության, տնտեսության և մշակույթի մասին տես *Մոնղոլական Ժողովրդական Հանրապետություն* հոդվածում):

ՉԺՀ Մ-ի (մի քանի մոնղ. ազգություններ) ընդհանուր թիվը՝ 1.680 հզ. (1953, հետագայում պաշտոնական տվյալներ չէր հրապարակվել): Խոսում են մոնղ. լեզուների հվ., արմ. և արլ. խմբերի զանազան բարբառներով: 1950-ական թթ. վերջից չինական իշխանությունները Մ-ի նկատմամբ վարում են խտրականության և բռնի ձուլման քաղաքականություն:

**ՄՈՆՂՈԼՈԻԴ ՌԱՍԱ**, ասիա-ամերիկյան ռասա, մարդկային մեծ ռասաներից մեկը: Տարբերվում է սև, ուղիղ, կոշտ, երբեմն՝ ալիքաձև մազերով, մուգ աչքերով, մաշկի թուխ, հաճախ՝ դեղնավուն գույնով, թույլ զարգացած երրորդական մազածածկույթով, այտոսկրների խիստ ցցվածությամբ, հարթ դեմքով, մեծ մասամբ ցածր քթարմատով, վերին կոպի խիստ զարգացած ծալքերով ևն: Մ. ռ. տարածված է Ասիայում և Ամերիկայում (հնդկացիներ): Բաժանվում է մի քանի փոքր ռասաների. հյուսիս-ասիական, արկտիկական, հարավ-ասիական, հեռավորարևելյան, ամերիկյան:

**ՄՈՆՄՈՒՍՈ** Գաստոն (17.1.1883, Լյուին, *Ֆրանսիա — 11.7.1960*, Փարիզ), ֆրանսիական բանվորական շարժման գործիչ և գրող: 1910-ից աշխատել է Երկաթուղում (Փարիզ): 1920—21-ին՝ Երկաթուղայինների ֆեդերացիայի, 1921—22-ին՝ Փարիզի օկրուգի միացյալ արհմիությունների գլխավոր քարտուղար: 1922-ից՝ արհմիութենական «Վի ուվրիեր» («La Vie Ouvrière») շաբաթաթերթի անփոփոխ դիրեկտորը: 1922—36-ին Մ. եղել է Աշխատանքի համընդհանուր միավորիչ կոնֆեդերացիայի գլխավոր քարտուղարը: 1922-ի նոյեմբերին մասնակցել է Պրոֆինտերնի II կոնգրեսին, որտեղ հանդիպել է Վ. Ի. Լենինի հետ: 1925-ին մտել է Ֆրանսիայի կոմկուսի (ՖԿԿ) շարքերը: 1926—37-ին՝ Պրոֆինտերնի գործադիր կոմիտեի անդամ: Աշխատավորների հակաիմպերիալիստական ցույցեր կազմակերպելու համար Մ. քանիցս ռեպրեսիաների է ենթարկվել: Նա նպաստել է Աշխատանքի համընդհանուր միացյալ կոնֆեդերացիայի ստեղծմանը (1936): 1936—39-ին՝ Ֆրանսիայի պառլամենտի դեպուտատ: II համաշխարհային պատերազմի տարիներին (1939—1945)՝ Դիմադրության շարժման կազմակերպիչներից: 1926—45-ին և 1956—60-ին՝ ՖԿԿ ԿԿ-ի, 1932—45-ին՝ ՖԿԿ ԿԿ Քաղբյուրոյի անդամ: Կոմինտերնի VII կոնգրեսում (1935) ընտրվել է Ինտերնացիոնալ վերստուգիչ հանձնաժողովում: 1945—1960-ին Աշխատանքի համընդհանուր կոնֆեդերացիայի քարտուղարն էր: Մ-ի արձակին հատուկ է հումորը, կենսասիրությունը, հայրենի երկրի սերը, խաղաղության անսասան մարտիկի իմաստությունը («Գաստոն Մոնմուսոյի մաղախը» ընտիր տեքստերի ժողովածու, 1963):

**ՄՈՆՅՈՒՇԿՈ** (Moniuszko) Ստանիսլավ (1819—1872), լեհ կոմպոզիտոր, դիրիժոր, երաժշտական-հասարակական գործիչ: Երաժշտության դասեր է առել մորից, 1827-ից սովորել Վարշավայում Ա. Ֆրեյերի (դաշնամուր, երգեհոն), 1830—37-ին՝ Մինսկում, Դ. Ստեֆանովիչի (կոմպոզիցիա), 1837—40-ին՝ Բեռլինում, Ֆ. Ռունգենհագենի (խմբավարություն) մոտ: Հրատարակված առաջին ստեղծագործությունը՝ «Երեք երգ» (1838, Ա. Միցկևիչի խոսքերով): 1840—58-ին ապրել և ստեղծագործել է Վիլնյուսում: 1842-ին ստեղծել է երգեր, որոնք ամփոփված են «Տնային երգարաններ» ժողովածուներում (1—6-ը՝ 1844—59, 7—12-ը՝ ետմահու): Իր երգերով (մոտ 400), որոնցում արտահայտվել են կոմպոզիտորի երաժշտական ոճին բնորոշ գծերը՝ ժող. երգ-պարային տարրերի օգտագործում, մեղեդայնություն, երաժշտական լեզվի դեմոկրատացում ևն, Ֆ. Շոպենից հետո Մ. ազգային վոկալ երաժշտության հիմքն է դրել: 1858-ից աշխատել է Վարշավայում, եղել «Վելկի թատրոնի» դիրիժոր, 1864—72-ին՝ Երաժշտական ինստ-ի պրոֆեսոր: Գրել է 6 կանտատ («Միլդա», 1848, «Ղրիմյան սոնետներ», 1868 ևն), 6 մեսսա, ռեքվիեմ, սիմֆոնիկ նվագախմբի համար՝ «Հեքիաթ» (1848), «Կայնե» (1856), «Ռազմական» (1857) նախերգանքները ևն: Մ. ազգային օպերայի ստեղծողն է («Հալկա», 1848, բեմ.՝ 1854, Վիլնյուս): Գրել է ավելի քան 15 օպերա, մի քանի վոդևիլ, օպերետ, մոտ 50 դաշնամուրային պիես, վոկալ անսամբլներ, խմբերգեր, լարային 2 կվարտետ:



Ս. Մոնյուշկո

*Գրկ.* Рудзинский В., Монюшко, пер. с польск., М., 1960.

**ՄՈՆՈ...** (< հուն. μόνος — մեկ, միակ), բարդ բառերի սկզբնամաս, որ նշանակում է մեկ(միա..., մեն...), միակ. օրինակ, *մոնոպլան, մոնոտիպ, մոնոքրոմատոր*:

**ՄՈՆՈ** (Monod) Գաբրիել (1844—1912), ֆրանսիական պատմաբան: Բարոյական և քաղաքական ԳԱ անդամ (1897): Սովորել է Գյոթինգենի համալսարանում: 1868-ից դասավանդել է Բարձրագույն գիտելիքների պրակտիկ դպրոցում, այնուհետև դարձել նույն դպրոցի տնօրենը: Ֆրանսիայում սկզբնավորել է բարձրորակ աղբյուրագետների, արխիվիստների նախապատրաստումը: 1905-ից՝ Կոլեժ դը Ֆրանսի պրոֆեսոր: 1876-ին հիմնել է «Revue historique» ամսագիրը: Հարելով լիբերալ պոզիտիվիզմին՝ Մ. գտնում էր, որ պատմության ուսումնասիրության առարկան պետք է լինեն պատմական պրոցեսները (այլ ոչ թե առանձին երևույթներ ու անձեր), որոնք հնարավորություն են տալիս բացահայտելու պատմական օրինաչափություններ: Մ-ի հետազոտությունները նվիրված են աղբյուրագիտության և պատմագրության հարցերին: Մ-ին ճանաչում բերեց «Ֆրանսիայի պատմության մատենագիտություն» (1888) գործը: Մ. ամուսնացած էր Ա. Ի. Գերցենի դուստեր հետ:

**ՄՈՆՈԳԱՄԻԱ** (*մոնո...* և հուն. γάμος — ամուսնություն), տես *Մենամուսնություն*:

**ՄՈՆՈԳԵՆ ՖՈՒՆԿՑԻԱ** (< հուն. μονογενής — միածին), կոմպլեքս փոփոխականի ֆունկցիա, որը որոշված է որևէ E բազմության վրա և ունի ածանցյալ այդ բազմության որևէ կետում (կ ե տ ու մ Մ. ֆ.) կամ այդ բազմության յուրաքանչյուր կետում (բ ա զ մ ու թ յ ա ն վ ր ա Մ. ֆ.): Եթե E բազմությունը տ ի ր ու յ թ է, ապա (E) բազմության վրա Մ. ֆ-ի և E-ում *անալիտիկ ֆունկցիայի* հասկացությունները համընկնում են:

**ՄՈՆՈԴԻԱ** (հուն. μονῳδία — բառացի՝ մեներգեցողություն, < *մոնո...* և ᾠδός — երգիչ), Հին Հունաստանում մեկ երգչի երգեցողությունը ավլոսի, կիֆարայի կամ քնարի նվագակցությամբ: Մ. է կոչվել նաև մեներգեցողության XVI դարից Իտալիայում հաստատված ոճը: Լայն առումով Մ. է կոչվում ընդհանրապես միաձայն երգեցողությունը կամ դրա ոճով հորինված միաձայն գործիքային նվագը: *Մասնավոր առումով (հայ երաժշտագիտության մեջ)* Մ. է կոչվում երաժշտական այնպիսի ձևը, որը հիմնված է զուտ մեղեդիական (և ոչ հարմոնիկ, ակորդային) զորձոնի վրա: Հայ ժող., հոգևոր և գուսանա-աշուղական երաժշտությունը (ինչպես և արլ. շատ ժողովուրդների երաժշտությունը) մոնոդիական ոճի կատարյալ կրողներ են: *Ռ. Աթայան*

**ՄՈՆՈԹԵԻԶՄ** (*մոնո...* և *թեիզմ*), տես *Միաստվածություն*:

**ՄՈՆՈԹԵՄԱՏԻԶՄ** (*մոնո...* և հուն. θέμα — այն, ինչ ընկած է հիմքում), երաժշտական ստեղծագործության կառուցման սկզբունք, որ հիմնված է միայն մեկ թեմայի կամ թեմաների միայն մեկ ամբողջության բազմակողմանի մեկնաբանման վրա: Մ. զոյանում է, օրինակ, սոնատա-սիմֆոնիկ շարքի մասերը միևնույն թեմայով միավորելու դեպքում: Այդպիսի թեման երբեմն անվանում են լ ե յ տ թ ե մ ա: Մ-ի սկզբունքը առաջին անգամ օգտագործել է Լ. Բեթհովենը իր 5-րդ սիմֆոնիայում, բարձր զարգացման հասել *ծրագրային երաժշտության* մեջ: Մ. հետևողականորեն կիրառել են Հ. Բեռլիոզը («Ֆանտաստիկ սիմֆոնիա», «Հարոլդը Իտալիայում»), Ֆ. Լիստը («Պրելյուդներ», «Ֆաուստ-սիմֆոնիա», սի-մի-

նոր սոնատ): Հետագայում Մ. գործածվել է ավելի ազատ՝ զուգակցվելով երաժշտական զարգացման այլ սկզբունքների հետ (Չայկովսկու 4-րդ, 5-րդ, Սեն Սանսի 3-րդ, Դվորժակի 9-րդ, Սկրյաբինի, Շոստակովիչի 7-րդ և այլ սիմֆոնիաները):

**ՄՈՆՈԼՈԳ** (*մոնո...* և հուն. λόγος — խոսք, արտասանություն), տես *Մենախոսություն*:

**ՄՈՆՈԽՈՐԴ** (< հուն. μονόχορδος — միալար, *մոնո...* և հուն. χορδή— լար), 1. հին հունական միլարանի կսմիթային երաժշտական գործիք: 2. Երաժշտական-ակուստիկական ուսումնասիրությունների համար նախատեսված սարք: Բաղկացած է ծայրերում 2 շեմիկներ ունեցող ռեզոնատորային երկարավուն փայտյա արկղից, վերին հնչերեսին ձգված մեկ լարից և շարժական հենակից: Հայտնի է



Մոնոխորդ

Պյութագորասի ժամանակներից (մ. թ. ա. VI դ.): 3. Հարմարանք դաշնամուրի մեջ, որի միջոցով մուրճիկը հարվածում է մեկ հնչյունի լարախմբի 2—3 լարերից միայն մեկին (ժամանակակից դաշնամուրներում Մ-ին համապատասխանում է ձախ ոտնակը): 4. Մինչև XVIII դ. *կլավիկորդի* անվանումը:

**ՄՈՆՈԿԱՐՊ ԲՈՒՅՍԵՐ** (*մոնո...* և հուն. καρπός — պտուղ, արդյունք), տես *Միապտղաբեր բույսեր*:

**ՄՈՆՈԿԼԻՆԱՅԻՆ ՀԱՄԱԿԱՐԳ** (*մոնո...* և հուն. κλίνω — հակել, խոնարհել), բյուրեղագիտական համակարգ, որն ընդգրկում է համաչափության երեք տեսակ կամ բյուրեղների երեք դաս. ա. դիէդրիկ առանցքային՝ երկրորդ կարգի մեկ բևեռային առանցք ($L^2$), բ. դիէդրիկ անառանցք՝ համաչափության մեկ հարթություն (P) և գ. ռոմբա-պրիզմատիկ՝ երկրորդ կարգի առանցք, հարթություն և համաչափության կենտրոն ($L^2PC$): Մ. հ-ում հանդիպող բոլոր պարզ ձևերը բաց են, այսինքն՝ տարածություն չեն փակում: Դրանք են՝ մոնոէդր (1 նիստ), դիէդր (երկու հատվող նիստեր), պինակոիդ (զուգահեռ երկու նիստեր) և ռոմբային պրիզմա (չորս նիստեր, որոնք հատվում են ըստ զուգահեռ կողերի): Մ. հ-ին պատկանող բոլոր բյուրեղները օպտիկապես երկառանցք են: Մ. հ-ում են բյուրեղանում միներալների և արհեստական միացությունների բոլոր ուսումնասիրված բյուրեղների մոտ 42%-ը՝ գինեթթու, սախարոզա, կամֆորա, նավթալին, ինչպես նաև գիպսը, օրթոկլազը, մուսկովիտը, վոլֆրամիտը և այլ միներալներ:

**ՄՈՆՈԿՈՒԼՏՈՒՐԱ** երկրագործության մեջ (*մոնո...* և լատ. cultura — մշակում, զարգացում), 1. տնտեսությունում մշակվող գյուղատնտեսական միակ կուլտուրա: 2. Մեկ տեսակ կուլտուրայի երկարատև, անընդհատ (կրկնվող) աճեցումը միևնույն հողամասում (դաշտ, բանջարանոց, մարգագետին)՝ առանց ցանքաշրջանառության (կուլտուրաների հաջորդափոխման) պահպանման: Մ-ի դեպքում վատանում են հողի ֆիզիկական հատկությունները, նվազում հումուսի պարունակությունը, հողը միակողմանի ուժասպառվում է (օրինակ, հացահատիկային բույսերի երկարատև մշակումը միևնույն հողամասում հողը աղքատացնում է առավելապես ֆոսֆորով, շաքարի ճակնդեղինն ու կարտոֆիլինը՝ կալիումով, ընդավորներինը՝ ֆոսֆորով և կալցիումով), էրոզացվում են: Դրա հետևանքով բերքատվությունը կտրուկ (1,5—2 անգամ) նվազում է: Պարարտացումը միայն դանդաղեցնում է պրոցեսը: Մ. պայմաններ է ստեղծում մշակվող կուլտուրային հարմարված մոլախոտերի, վնասատու միջատների և հիվանդությունների հարուցիչների ինտենսիվ բազմացման համար: Երկրագործության ինտենսիվացմանը զուգընթաց (ցանքաշրջանառությունների կիրառում) Մ. դուրս մղվեց:

**ՄՈՆՈՄԱԽԻ ԳԴԱԿ**, ինքնակալության խորհրդանիշ Ռուսաստանում, ռուսական մեծ իշխանների և ցարերի թագը: Ավանդության համաձայն, Մ. գ. (ոսկյա նրբահյուս սրածայր գլխարկ՝ պսակված խաչով, սամույրով, թանկարժեք քարերով, XIV դ. միջինասիական գործ) ուղարկել է բյուզանդական կայսր Կոստանդին Մոնոմախն իր թոռանը՝ Կիևյան մեծ իշխան Վլադիմիր Մոնոմախին: Մ. գ-ով առաջինը թագադրվել է ցար Իվան IV (1547). սովորույթը պահպանվել է մինչև 1721-ը, երբ Մ. գ. փոխարինվել է կայսերական թագով: Պահվում է Մոսկվայի Կրեմլի Զինապալատում:

**ՄՈՆՈՄԵՏԱԼԻԶՄ** (*մոնո...* և հուն. μεταλλεῖον— մետաղ), դրամական համակարգ, երբ ընդհանուր համարժեք և դրամաշրջանառության հիմք է ծառայում որևէ մետաղ: Կարող է լինել պղնձե, արծաթե, ոսկե: Պղնձե Մ. գոյություն է ունեցել Հռոմում (մ. թ. ա. III—II դդ.), արծաթե՝ Ռուսաստանում (1843—52), Հոլանդիայում (1847—75), Հնդկաստանում (1852—1893), Չինաստանում (մինչև 1935-ը): Ոսկե Մ. սահմանվել է XVIII դ. վերջին Մեծ Բրիտանիայում, իսկ XIX դ. 2-րդ կեսից՝ նաև կապիտալիստական մյուս երկրներում (Ռուսաստանում՝ 1897-ին): Միամետաղ համակարգի պայմաններում շրջանառում են ոչ միայն ոսկե ու արծաթե, այլև թերարժեք դրամներ (օրինակ, ոսկե Մ-ի պայմաններում՝ պղնձե ու արծաթե դրամներ, նաև արժենիշներ): Կապիտալիզմի զարգացմամբ առավել տարածուն դարձավ ոսկե Մ., իսկ առաջին համաշխարհային պատերազմից հետո այն փոխարինվեց բանկային տոմսերի ու թղթադրամների շրջանառությամբ:

**ՄՈՆՈՄԵՐՆԵՐ** (< *մոնո...* և հուն. μέρος — մաս), ցածրամոլեկուլային նյութեր, որոնց մոլեկուլները ռեակցիայի մեջ են մտնում իրար կամ այլ մոլեկուլների հետ (տես *Պոլիմերացում* և *Պոլիկոնդենսացում*) և առաջացնում *պոլիմերներ*: Պոլիմերվող Մ. հիմնականում մոլեկուլում կրկնակի, եռակի քիմ. կապեր C=C, C≡C, C=O, C≡N են (օլեֆիններ, դիենային և ացետիլենային ածխաջրածիններ, ալդեհիդներ են) կամ ցիկլային խմբավորումներ՝




(օլեֆինների օքսիդներ, լակտամներ են) պարունակող խմբեր են: Պոլիկոնդենսացող Մ-ի մոլեկուլներն ունեն երկու կամ ավելի ռեակցունակ (ֆունկցիոնալ) խմբեր, օրինակ, երկամիններ, երկկարբոնաթթուներ, ամինաթթուներ, գլիկոլներ են: Եթե Մ. ունեն երկու ֆունկցիոնալ խումբ, ապա նրանց պոլիկոնդենսացումից առաջանում են գծային, երկուսից ավելի դեպքում՝ ճյուղավորված և ցանցային պոլիմերներ:

**ՄՈՆՈՄՈՏԱՊԱ**, Մվենե Մուտապա, վաղ պետական միավորում Աֆրիկայում, Զամբեզի և Լիմպոպո գետերի միջագետքում: Ստեղծել է մաշոնա ժողովրդի կարանգա ցեղը: Մ. ծաղկում է ապրել XIV—XV դդ., երբ նրա քաղ. ազդեցությունը տարածվել է միջագետքի սահմաններից դուրս գտնվող տարածքների վրա: Մ-ի հասարակական-տնտեսական կառուցվածքը ձևավորվել է Զիմբաբվեի երկաթի դարի մշակույթի հիման վրա: Կարանգայի գերագույն առաջնորդները, որոնք կրել են մվենե մուտապա տիտղոսը, ունեցել են քաղ. և կրոնական մեծ իշխանություն: Մեծ դեր է կատարել տոհմացեղային ավագանին, առաջացել են *պայմանական դեմոկրատիայի* հատուկ պետ. մարմինների տարրերի սաղմերը: Մ-ում եղել է բնատնտեսություն: Զգալի զարգացման են հասել երկրագործությունը, մետաղամշակությունը, խեցեգործությունը, մոնումենտալ քարաշինարարությունը, առևտրական կապերը: Երկպառակտչական պատերազմների հետևանքով 1693-ին Մ. կործանվել է ռոզվի ցեղերի կողմից:

*Գրկ.* Фадеев Л. А., Мономотапа. Древняя африканская цивилизация в междуречье Замбези-Лимпопо, в кн.: Африканский этнографический сборник, т. 4, М — Л., 1962.

**ՄՈՆՈՆՈՒԿԼԵՈԶ ՎԱՐԱԿԻՉ**, մոնոցիտային անգինա, գեղձային տենդ, Ֆիլատովի հիվանդություն (առաջին անգամ նկարագրել է Ն. *Ֆիլատովը*՝ 1885-ին), սուր վարակիչ հիվանդություն. ընթանում է տենդով, *անգինայով*, ավշահանգույցների մեծացումով և արյան կազմի յուրահատուկ փոփոխություններով: Հարուցիչը հավանաբար ֆիլտրվող վիրուսն է, որն ախտածին է մարդկանց և կապիկների համար: Վարակի աղբյուրը հիվանդ մարդն է կամ առողջ վիրուսակիրը: Վարակվում են օդակաթիլային ճանապարհով: Հարուցիչը շնչառական ուղիների լորձաթաղանթով անցնում է արյունատար անոթներ, արյան հոսքով տարածվում և ախտահարում ավշահանգույցները: Գաղտնի շրջանը 6—18 օր է: Հիվանդությունն սկսվում է ընդհանուր թուլությամբ, ջերմության բարձրացմամբ, կոկորդի ցավերով: Նշագեղձերը պատվում են փառով: Բնորոշ ախտանշանը պարանոցային ավշահանգույցների մեծացումն է, որոնք շոշափելիս ցավոտ չեն և չեն թարախակալվում: Մաշկի և լորձաթաղանթների վրա երբեմն նկատվում են կետավոր արյունազեղումներ: Լյարդը և փայծաղը մեծանում են: Արյան մեջ ավելանում է լեյկոցիտների թիվը

(10000—20000), հիմնականում գերակըշռում են մոնոցիտները և լիմֆոցիտները, ի հայտ են գալիս միակորիզ բջիջներ՝ մոնոնուկլեարներ: Տենդը տևում է 3—4 շաբաթ: Բարդությունները՝ թոքաբորբ, դեղնախտ, շճային մենինգիտ, էնդոկարդիտ, փայծաղի պատռվածք, հեմոլիտիկ սակավարյունություն ևն:

Բուժումը՝ ախտանշանային, ծանր դեպքերում՝ ստերոիդային հորմոններ (պրեդնիզոլոն), անտիբիոտիկներ ևն: Կանխարգելումը. հիվանդների վաղ հայտնաբերում և մեկուսացում:

**ՄՈՆՈՊԼԱՆ** (< *մոնո*... և լատ. planum — հարթություն), մեկ թև ունեցող *ինքնաթիռ*: XX դ. սկզբին ինքնաթիռի թևերն ամրացվում էին մետաղալարերի, մետաղաձողանների, պողպատե ժապավենների (ձըգալարային Մ.) կամ դիմկալների (դիմկալային Մ.) օգնությամբ: Հետագայում բարձրամուր նյութերի օգտագործման շնորհիվ հնարավոր դարձավ խուսափել ձգալարերից և դիմկալներից (ազատ կրող Մ.): Ըստ ֆյուզելաժի նկատմամբ թևի դիրքի տարբերում են բարձրապլաններ, միջնապլաններ և ցածրապլաններ: Ազատ կրող Մ-ի թևը *բիպլանի* թևից ծանր է, սակայն աերոդինամիկական տեսակետից այդ Մ-ի սխեման առավել կատարյալ է և լայնորեն կիրառվում է ինքնաթիռաշինության մեջ: Թեև ազատ կրող Մ-ները համընդհանուր տարածում են գտել, ձգալարային և դիմկալային Մ-ները դեռ կիրառվում են թեթև և սպորտային օդագնացության մեջ:

**ՄՈՆՈՊԽՈՆՔ,** գյուղատեղի Արևմտյան Հայաստանի Տարոն գավառում, Արածանի գետի աջ ափին: Պահպանվել են հին շենքերի ավերակներ և շիրմաքարեր: Ըստ ավանդության այս գյուղի բոլոր բնակիչները եղել են ընտիր կողովագործներ: Նրանց հյուսած կողովները վաճառվել են նույնիսկ հեռավոր Եգիպտոսում: Բյուզանդացիները Մ-ի բնակիչներին գաղթեցրել են Կոստանդնուպոլիս՝ պարտադրելով, որ նրանք այստեղ կողովներ հյուսեն միայն կայսրերի համար:

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՆՐԱԳԻՏԱՐԱՆԻ ԳԻՏԱԾՅՈՒՂԱՅԻՆ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԸ

## ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅԱՆ

**Ա. Բ. Բաղդասարյան**, ՀՍՍՀ ԳԱ թղթ. անդամ (նախագահ), **Գ. Ս. Աբրահամյան**, աշխ. գիտ. թեկնածու, **Ա. Ա. Ասլանյան**, աշխ. գիտ. թեկնածու, **Ս. Պ. Բալյան**, աշխ. գիտ. դ-ր, **Հ. Կ. Գաբրիելյան**, աշխ. գիտ. դ-ր (նախագահի տեղակալ), **Ս. Մ. Դուլյան**, աշխ. գիտ. թեկնածու, **Թ. Խ. Հակոբյան**, պատմ. գիտ. դ-ր, **Ղ. Տ. Մուրադյան**, աշխ. գիտ. թեկնածու (գիտ. քարտուղար):

## ԱՍՏՂԱԳԻՏՈՒԹՅԱՆ

**Լ. Վ. Միրզոյան**, ֆիզմաթ գիտ. դ-ր (նախագահ), **Հ. Մ. Թովմասյան**, ֆիզմաթ գիտ. դ-ր, **Բ. Ե. Մարգարյան**, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս, **Ա. Տ. Քալլօղլյան**, ֆիզմաթ գիտ. թեկնածու:

## ԱՐՎԵՍՏԻ

**Ռ. Վ. Զարյան**, ՀՍՍՀ ԳԱ թղթ. անդամ (նախագահ), **Ռ. Ա. Աթայան**, արվ. թեկնածու (նախագահի տեղակալ), **Գ. Ճ. Գյոդակյան**, արվ. թեկնածու, **Ռ. Գ. Դրամբյան**, արվ. թեկնածու, **Ն. Կ. Թահմիզյան**, արվ. դ-ր, **Լ. Ա. Խալաթյան**, արվ. թեկնածու, **Լ. Հ. Հախվերդյան**, բան. գիտ. դ-ր, **Հ. Հ. Հակոբյան**, արվ. թեկնածու, **Վ. Ա. Հակոբջանյան** (գիտ. քարտուղար), **Բ. Մ. Հովակիմյան**, **Հ. Վ. Հովհաննիսյան**, արվ. դ-ր, **Մ. Մ. Ղազարյան**, արվ. թեկնածու, **Վ. Հ. Ղազարյան**, արվ. թեկնածու, **Է. Ա. Մանուկյան**, **Գ. Խ. Ստեփանյան**, արվ. դ-ր:

## ԲԺՇԿԱԳԻՏՈՒԹՅԱՆ

**Ս. Հ. Միրզոյան**, ՀՍՍՀ ԳԱ թղթ. անդամ (նախագահ), **Է. Ս. Գաբրիելյան**, ՀՍՍՀ ԳԱ թղթակից անդամ, **Ս. Մ. Գալստյան**, բժշկ. գիտ. դ-ր, **Վ. Ջ. Գրիգորյան**, կենսբ. գիտ. դ-ր, **Կ. Մ. Դեղձունյան**, բժշկ. գիտ. դ-ր, **Ջ. Լ. Դոլաբջյան**, բժշկ. գիտ. դ-ր, **Ռ. Հ. Հարությունյան**, բժշկ. գիտ. դ-ր (նախագահի տեղակալ), **Վ. Հ. Հովհաննիսյան**, բժշկ. գիտ. դ-ր, **Ռ. Ս. Մամիկոնյան**, բժշկ. գիտ. դ-ր, **Լ. Խ. Մանուկյան**, բժշկ. գիտ. թեկնածու, **Գ. Ի. Միրզոյան**, բժշկ. գիտ. դ-ր, **Լ. Պ. Մարգարյան**, բժշկ. գիտ. դ-ր, **Գ. Ա. Մինասյան**, բժշկ. գիտ. դ-ր, **Լ. Մ. Մկրտչյան**, բժշկ. գիտ. դ-ր, **Ֆ. Մ. Աղամալյան** (գիտ. քարտուղար):

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ

**Ս. Կ. Կարապետյան**, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (նախագահ), **Գ. Ա. Աղախանյան**, գյուղատնտ. գիտ. թեկնածու, **Գ. Ա. Բաղրամյան**, տեխ. գիտ. դ-ր, **Հ. Բ. Բոյախչյան**, անասնաբույժ. գիտ. դ-ր, **Ճ. Մ. Գրիգորյան**, տեխ. գիտ. դ-ր, **Ջ. Ք. Դիլանյան**, տեխ. գիտ. դ-ր, **Ռ. Ա. Էդիլյան**, գյուղատնտ. գիտ. դ-ր, **Ե. Ս. Ղազարյան**, կենսբ. գիտ. դ-ր, **Ա. Ա. Մաթևոսյան**, ՀՍՍՀ ԳԱ թղթ. անդամ (նախագահի տեղակալ), **Ա. Ե. Մարգարյան**, գյուղատնտ. գիտ. դ-ր, **Ա. Ս. Մելքոնյան**, գյուղատնտ. գիտ. դ-ր, **Մ. Ս. Մելքոնյան**, տնտ. գիտ. դ-ր, **Վ. Բ. Ոսկանյան**, գյուղատնտ. գիտ. դ-ր (նախագահի տեղակալ), **Հ. Մ. Խաչատրյան** (գիտ. քարտուղար):

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ

**Է. Մ. Ջրբաշյան**, ՀՍՍՀ ԳԱ թղթ. անդամ (նախագահ), **Գ. Վ. Աբգարյան**, բան. գիտ. դ-ր, **Ս. Բ. Աղաբաբյան**, բան. գիտ. դ-ր, **Մ. Թ. Ավդալբեգյան**, բան. գիտ. դ-ր, **Ա. Մ. Գասպարյան**, բան. գիտ. թեկնածու, **Ա. Պ. Գրիգորյան**, բան. գիտ. դ-ր, **Հ. Մ. Դավթյան**, բան. գիտ. թեկնածու, **Ս. Կ. Դաբոնյան**, բան. գիտ. դ-ր, **Գ. Ա. Թաթոսյան**, **Հ. Ս. Թամրազյան**, բան. գիտ. դ-ր, **Ս. Մ. Կուրտիկյան**, **Պ. Հ. Հակոբյան**, բան. գիտ. դ-ր (նախագահի տեղակալ), **Ս. Բ. Հարությունյան**, բան. գիտ. դ-ր, **Ա. Տ. Ղանալանյան**, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս, **Մ. Մ. Մկրյան**, ՀՍՍՀ ԳԱ թղթ. անդամ, **Լ. Մ. Մկրտչյան**, բան. գիտ. դ-ր, **Ա. Մ. Նազինյան**, բան. գիտ. թեկնածու, **Վ. Ս. Նալբանդյան**, ՀՍՍՀ ԳԱ թղթ. անդամ, **Լ. Հ. Շեխոյան**, բան. գիտ. թեկնածու, **Բ. Լ. Չուգասզյան**, բան. գիտ. թեկնածու, **Լ. Օ. Սամվելյան**, արվ. դ-ր, **Ս. Ն. Սարինյան**, բան. գիտ. դ-ր, **Վ. Բ. Վարդանյան** (գիտ. քարտուղար):

## ԵՐԿՐԱԲԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԵՐԿՐԱՖԻԶԻԿԱՅԻ

**Ա. Տ. Ասլանյան**, ՀՍՍՀ ԳԱ թղթ. անդամ (նախագահ), **Վ. Ա. Ավետիսյան**, երկրաբանա-հանքաբանական գիտ. թեկնածու, **Ա. Հ. Գաբրիելյան**, ՀՍՍՀ ԳԱ թղթ. անդամ, **Ռ. Գ. Գևորգյան**, երկրաբանա-հանքաբանական գիտ. թեկնածու, **Է. Ա. Խաչատրյան**, երկրաբանա-հանքաբանական գիտ. դ-ր, **Վ. Պ. Հասրաթյան**, երկրաբանա-հանքաբանական գիտ. թեկնածու, **Ճ. Ս. Հովհաննիսյան**, երկրաբանա-հանքաբանական գիտ. թեկնածու, **Ի. Գ. Մաղաքյան**, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս, **Ա. Գ. Նազարով**, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս, **Կ. Գ. Շիրինյան**, երկրաբանա-հանքաբանական գիտ. թեկնածու, **Է. Լ. Սարգսյան** (գիտ. քարտուղար), **Ա. Թ. Վեհունի**, երկրաբանա-հանքաբանական գիտ. թեկնածու, **Գ. Ի. Տեր-Ստեփանյան**, ՀՍՍՀ ԳԱ թղթ. անդամ, **Ա. Ե. Քոչարյան**, երկրաբանա-հանքաբանական գիտ. դ-ր (նախագահի տեղակալ):

## ԺՈՂԿՐԹՈՒԹՅԱՆ, ՄԱՆԿԱՎԱՐԺՈՒԹՅԱՆ ԵՎ ՀՈԳԵԲԱՆՈՒԹՅԱՆ

**Ա. Ե. Տեր-Գրիգորյան**, մանկվ. գիտ. դ-ր (նախագահ), **Ա. Ա. Բալյան**, մանկվ. գիտ. դ-ր, **Հ. Մ. Թութունջյան**, հոգեբան. գիտ. դ-ր, **Ա. Հ. Իգնատյան**, մանկվ. գիտ. թեկնածու, **Ս. Կ. Խուդոյան**, մանկվ. գիտ. թեկնածու, **Ճ. Ա. Խուրշուդյան** (գիտ. քարտուղար), **Ա. Ս. Մաթևոսյան**, պատմ. գիտ. թեկնածու, **Գ. Ա. Նազիկյան**, մանկվ. գիտ. դ-ր, **Ա. Ա. Նալչաջյան**, հոգեբան. գիտ. թեկնածու:

## ԼԵԶՎԻ

**Գ. Բ. Ջահուկյան**, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (նախագահ), **Ա. Ա. Աբրահամյան**, ՀՍՍՀ ԳԱ թղթ. անդամ, **Ս. Գ. Աբրահամյան**, բան. գիտ. դ-ր, **Է. Ռ. Աթայան**, բան. գիտ. թեկնածու, **Է. Բ. Աղայան**, ՀՍՍՀ ԳԱ թղթ. անդամ, **Վ. Դ. Առաքելյան**, բան. գիտ. դ-ր, **Հ. Խ. Բարսեղյան**, բան. գիտ. թեկնածու, **Ռ. Ա. Իշխանյան**, բան. գիտ. դ-ր, **Ա. Ա. Խաչատրյան**, բան. գիտ. թեկնածու, **Խ. Հ. Կարադելյան** (գիտ. քարտուղար), **Ա. Ս. Մարգարյան**, բան. գիտ. դ-ր, **Հ. Դ. Մուրադյան**, բան. գիտ. դ-ր, **Ն. Ա. Պառնասյան**, բան. գիտ. դ-ր (նախագահի տեղակալ), **Հ. Ջ. Պետրոսյան**, բան. գիտ. դ-ր, **Ա. Մ. Սուքիասյան**, բան. գիտ. դ-ր, **Վ. Ա. Քոսյան**, բան. գիտ. դ-ր:

## ԿԵՆՍԱԲԱՆՈՒԹՅԱՆ

**Վ. Հ. Ղազարյան**, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (նախագահ), **Մ. Ս. Ադամյան**, կենսբ. գիտ. թեկնածու, **Հ. Ս. Ավետյան**, կենսբ. գիտ. թեկնածու, **Է. Գ. Աֆրիկյան**, ՀՍՍՀ ԳԱ թղթ. անդամ, **Ա. Մ. Բարսեղյան**, կենսբ. գիտ. թեկնածու, **Ն. Պ. Բեգլարյան**, կենսբ. գիտ. դ-ր, **Թ. Գ. Ծատուրյան**, կենսբ. գիտ. թեկնածու, **Լ. Խ. Կիրակոսյան** (գիտ. քարտուղար), **Ա. Ա. Հայրապետյան**, կենսբ. գիտ. դ-ր (նախագահի տեղակալ):

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ (ՀԻՆ ԵՎ ՄԻՋԻՆ ԴԱՐԵՐ)

**Լ. Ս. Խաչիկյան**, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (նախագահ), **Լ. Հ. Բաբայան**, պատմ. գիտ. դ-ր, **Հ. Մ. Բարթիկյան**, պատմ. գիտ. դ-ր, **Ս. Տ. Երեմյան**, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (նախագահի տեղակալ), **Մ. Ա. Կատվալյան**, պատմ. գիտ. թեկնածու (գիտ. քարտուղար), **Ս. Տ. Մելիք-Բախշյան**, պատմ. գիտ. դ-ր, **Պ. Մ. Մուրադյան**, բան. գիտ. թեկնածու, **Գ. Խ. Սարգսյան**, ՀՍՍՀ ԳԱ թղթ. անդամ, **Բ. Ա. Ուլուբաբյան**, պատմ. գիտ. դ-ր, **Հ. Դ. Փափազյան**, պատմ. գիտ. դ-ր:

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ (ՆՈՐ ԵՎ ՆՈՐԱԳՈՒՅՆ ՇՐՋԱՆ)

**Մ. Գ. Ներսիսյան**, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս (նախագահ), **Գ. Ա. Գալոյան**, ՀՍՍՀ ԳԱ թղթ. անդամ (նախագահի տեղակալ), **Հ. Ա. Ավետիսյան**, պատմ. գիտ. դ-ր, **Վ. Բ. Բարխուդարյան**, պատմ. գիտ. դ-ր, **Խ. Հ. Բարսեղյան**, պատմ. գիտ. դ-ր, **Վ. Վ. Գրիգորյան**, (գիտ. քարտուղար), **Լ. Ա. Խուրշուդյան**, պատմ. գիտ. դ-ր, **Ա. Մ. Հակոբյան**, պատմ. գիտ. դ-ր, **Ա. Ս. Համբարյան**, պատմ. գիտ. դ-ր, **Ա. Հ. Հարությունյան**, պատմ. գիտ. դ-ր, **Վ. Ն. Ղազախեցյան**, պատմ. գիտ. դ-ր, **Հ. Մ. Ղազարյան**, պատմ. գիտ. դ-ր, **Վ. Ա. Պարսամյան**, պատմ. գիտ. դ-ր:

